# ԿԱՐԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ

# ՀԱՍԱՐԱԿԱՑ ԱՂՕԹԻՑ

## ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ ԵԿԵՂԵՑԻՈՅ

ԱՐԱՐԵԱԼ

Ս. ՍԱՀԱԿԱՅ ՀԱՅՐԱՊԵՏԻ ԵՒ ՄԵՍՐՈՊԱՅ ՎԱՐԴԱՊԵՏԻ

ԵՒ ԳԻՒՏԱՅ ԵՒ ՅՈՎՀԱՆՆՈՒ ՄԱՆԴԱԿՈՒՆՒՈՅ

ԵՒ ԱՅԼՈՑ ՎԱՐԴԱՊԵՏԱՑ

*Ի ՀԱՅՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՏՆ. ՏՆ. ՍՏԵՓԱՆՈՍԻ ՊԵՏՐՈՍԻ Ժ. ԱԶԱՐԵԱՆ*
*ԿԱԹՈՂԻԿՈՍԻ ՏԱՆՆ ԿԻԼԻԿԻՈՅ*



ՎԵՆԵՏԻԿ

Ի ՍՈՒՐԲ ՂԱԶԱՐ

1898

Digitized by Google

Արհիապատիւ և Գերապայծառ Տէր

Բ ԱԶՄԱՀՈԳ տեսչութիւն հոգւոց, զոր ստանձնեալ է մեր զոյգ ընդ պաշտամանս, յորդորէ զմեզ, ի մէջ բազմապատիկ պարտուցս, մի՛ առնել զանց զխնդրովք Արհի. Եղբօրդ, որովք քրթմնջելոյ պատճառք և խոչընդակք խաղաղութեան բարձցին ի միջոյ, և պայծառասցի առ մեզ հաւատն սուրբ։ Աւելորդ է մեզ գրել Ձեզ, Պատ. Եղբայր, թէ քանիօ՛ն իցէ կարևոր առ այդ ընծայել ի լոյս զՃարականս և զկարգաւորութիւնս հասարակաց աղօթից Եկեղեցւոյս, ըստ միաբան ընթերցուածոյ ընտրելագունից ի գրչագիրս, զոր օրինակ առաջի առնէիք մեզ։ Նա՛ զի լուէին այդու խէթք կամ թիւր կարծիք ոմանց, որպէս թէ դրժող կամ անտեսող հայրենաւանդ ծիսից և արարողութեանց իցէ ուղղափառ Կրօնն. և որ մեծն է, հարթէր զուղին անձկալի միութեանն գործ համօրէն ազգիս ընդ Կեփայեան Վիմի, այնչափ տենչացեալն յԱրևելասէր և ի Գերագոյն Սրբազան Քահանայապետէս Լևոնէ ԺԳէ, որպէս էրն առ Սրբովք Հայրապետօք մերովք, որոց յիշատակն օրհնութեամբ եղիցի։

Եւ զի հարկ էր մեզ զգուշութեամբ ընթանալ ի կատարումն գործոյս, նախ քան զամենայն արժան համարեցաք դիմել առ Հայրն լուսոյ, և ի խորհրդոց հմտագունից՝ առ ի գիտել զարժանն գործելոյ յիրս յայս, և զառաջս առնուլ կամայական մեկնութեանց։

Եւ առ այս պարտ և պատշաճ թուեցաւ մեզ կարգել Զեկուցումն ի գլուխ հրատարակութեանդ, ի մեկնութիւն դըժուարիմաց և մթին բանից Սրբոց Հարց մերոց, որպէս

Առ Արհիապատիւ և Գերապայծառ Տէր
Հ. Իգնատիոս Վ. Կիւրեղեան Արքեպիսկոպոս
Տրայանուպոլսոյ
Ընդհանրական Աբբայ Մխիթարեան Միաբանութեան
Վենետկոյ

Ի Ս. ՂԱԶԱՐ — Ի ՎԵՆԵՏԻԿ

նոյնօրինակ դժուարիմաց բանք գտանին և՛ ի գիրս Սրբոց Հայրապետացն Արևելեան և Արևմտեան Եկեղեցեաց, և ոչ ոք յանդգնի դատապարտել զնոսա, յանուղղայ միտս մեկնելով զբանս նոցին։ Նա՛ զի և Հարքն մեր Սուրբք, երբ ի բազումս, ի Սրբոց Հայրապետացն Յունաց քաղեալ են ըզվարդապետական ձև բանից և ասացուածոց։ Վասն որոյ բաւ է յառաջ բերել զվկայութիւնս Սրբոց Հայրապետաց մերոց, և ցուցանել այնու զբնաւ իսկ համաձայնութիւննոցա ընդ վարդապետութիւնս Կաթողիկէ և Առաքելական Եկեղեցւոյ։ Սովին բերկրեսցին ոսկերք Հարցս Սրբոց, և պանծալիք ընծայեսցին անուանք նոցա. այսպէս և շինեսցին որք ի խոտոր միտս իմացան երբեմն ինչ ինչ ի մթին ասացուածոց նոցա, և միանգամայն լիցի մեզ պատսպարել զհօտս փոքրիկ յոչ ուղիղ մեկնութեանց՝ որոց մարթ էր կորրութիւն կրօնիցս աղարտել։

Դարձեալ, Պատուական Եղբայր, առ ի գործել անթերի զմատեանս, և յառաւել ապահովութիւն, ի դէպ է, յայն բանս և յասացուածս, զորոց յուզեցին ինչ խնդիրք, ի ձեռն ծանօթութեանց կարգելոց ի ստորև՝ յղել զընթերցանելիս ի Զեկուցումն. իսկ ի չորեսին յաջորդ ասացուածս, որք են. 1°. Միացեալ բնութեամբ ի յերկուց. 2°. Այսօր կանգնեցաւ աւազան մկրտութեան ի թողութիւն մեղաց. 3°. Սա եղև գլուխ առաքելոց սրբոց. 4°. Որ բոլորից ես պատճառ, դնել համառօտիւ ի ծանօթութեան զմեկնութիւնս, նշանակելով առընթեր զէջս Զեկուցման, յորում գտանին ընդարձակ բացատրութիւնք. օրինակ զայս. «Միացեալ բնութեամբ» (էջ 940), այս է անձնաւորապէս, տե՛ս ի Զեկուցման, յէջ...

Այսպէս ընդ մերում առանձինն պատասխանատուութեամբ և հովանաւորութեամբ՝ հաւանիմք ընդ առաջակայ հրատարակութիւնդ, և մաղթեմք սրտագին լինել պտղաբեր և շահեկան յօգուտ հոգւոց հասարակաց, ի պայծառութիւն Սրբոյ Կրօնիս և ի փառս Ամենասուրբ Երրորդութեան։

Ի կաթողիկոսարանէս, ի Բերա Կոստանդնուպօլսոյ, ի Տօնի Սրբոյ Յարութեան Տեառն, ի 5դ աւուր ամսեանն Ապրիլի հ. տ. 1898դ ամի, և յԵօթնեւտասներորդ ամի կաթողիկոսութեան մերոյ։

ԱՂՕԹԱՐԱՐ ՁԵՐ
ՍՏԵՓ. ՊԵՏՐՈՍ Ժ.
ԿԱԹՈՂԻԿՈՍ–ՊԱՏՐԻԱՐՔ ԿԻԼԻԿԻՈՅ։

Digitized by Google

# ՋԵԿՈՒՑՈՒՄՆ



Զկարգաւորութիւն հասարակաց աղօթից և զՇարականս Հայաստանեայց Եկեղեցւոյս, զառաջինն արդ ի մի հատոր ամփոփեալ, ըստ նախնի և հարազատ գրչագրաց փոյթ կալաք հրատարակութեամբ ԳԵՐԵՐՋԱՆԻԿ ՀՈԳԵՒՈՐ ՏԵԱՌՆ ՍՏԵՓԱՆՈՍԻ ՊԵՏՐՈՍԻ Ժ· ՊԱՏՐԻԱՐՔԻ ՏԱՆՆ ԿԻԼԻԿԻՈՅ ընծայել ի լոյս, որում ակն ունիմք՝ յետ կրկին և կրկին յայտարարութեանց Հայրապետացն Հռովմայ՝ սակս անթերի պահպանութեան հայրենաւանդ ծիսից և դրութեանց Արեւելեան Եկեղեցւոյ՝ բարւոյ և կամակար ընդունելութեան պատահել ի մերազնեայցս:

Աստանօր հարկ է մեզ յիշեցուցանել՝ զի ամենեցուն պարտաք են դուն գնել զողջամիտ բանս Հարց մերոց Սրբոց և զՎարդապետաց, ոչ ի թիւր այլ յուղիղ միտս իմանալ՝ եթէ ըստ դիպաց բանք ինչ պատահեսցեն դժուարիմացք. քանզի ո՞ւմ մարթ իցէ երկմտել զհամաձայնութենէ վարդապետութեան Հարցն մերոց ընդ կաթողիկէ հաւատոյս: Որոյ ի հաւաստիս կարգեմք աստէն քաղուածոյ սակաւ ինչ օրինակս յերգոց առաջակայ ժամակարգութեանս և համառօտ մեկնութիւնս: Իսկ եթէ ոմանց զառաւել ճոխագոյն վկայութիւնս և զհաւաստիս՝ քան զորս ի յաջորդսն ամփոփեմք՝ կամ իցէ գտանել, մարթ է նոցա լնուլ զփղձս փափաքանաց իւրեանց ի կրկին Տետրական Աստուածաբանութեան և յայլ մատենից ի տպարանէ վանացս ընծայելոց ի լոյս:

Digitized by Google

1. Սկսցուք նախ մեկնել համառօտիւ զբառսն անիմանալի և անտեսանելի, զոր Հարքն մեր, որպէս և Լատինք և Յոյնք, ուղղափառ միօք ի կիր առնուն զԱստուծոյ. քանզի այնգա-գոյնս ըստ ուղղափառ վարդապետութեան խոստովանին և մերքս զԱստուած տեսանելի և իմանալի։ Առ որ չափ լիցին յաջորդ տողքն Ներ. Շնորհալւոյն. « Բարունորէն բացատրեսցուք, զծածկեալ խորհուրդն ծանիցուք, զի լոյսն անտես իմանալի, մաքուր հոգւոց տեսանելի »։ Ժմգ. էջ 158։ Ի կիր առնուն զբառդ անիմանալի իբր անբովանդակելի յարաբերական մտաց. զի ի մեր լեզու՝ իմանալ ոչ միայն զպարզ ճանաչելն, այլ և յաճախ զմտօք բովանդակելն նշանակէ, որպէս յայտ է ի բանէն « Իմացարո՞ւք զայս ամենայն ». Մատթ. ԺԳ, 51։ — Դարձեալ՝ ի կիր արկանեն զբառն անտեսանելի՝ իբր զի ոչ կարեմք տեսանել զԱստուծոյ էութիւնն, նախ՝ արարածական զօրութեամբ, երկրորդ՝ մարմնաւոր աչօք, երրորդ՝ բովանդակապէս, չորրորդ՝ աստէն յաշխարհի։

2. Սոյնգունակ զՀայր անծին և անսկիզբն՝ կոչեն երբեմն պատճառ Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ։ Բայց որպէս վկայէ և սուրբն Թովմաս Ագուինացի (Մասն Ա. Խնդ. 33. յօդ. ա.), Յոյնք բուռն պատճառ յաստուածայինս՝ զայն իմանան, զոր Լատինք ասելով սկիզբն, որպէս ակներև ցուցաւ ի Փլորենտեան Տիեզերական Սինհոդոսի։ — Նմին իրի և սուրբ Հայրն մեր Ներսէս Շնորհալի յուղղափառ միտս, և յոյժ վայելչապէս երգէ ի դէմս Հօր Աստուծոյ յառաջին անդ տան Հարցին երրորդի աւուր Պենտակոստէի. « Որ բոլորից ես պատճառ էից անպատճառից և որոց պատճառաւ, Հայր անծին և անսկիզբն, Որդւոյ պատճառ անժամանակ ծննդեամբ, և Հոգւոյ բղխման անքննաբար ». էջ 784։ — Այնքան չքնաղ է յօրինուածս, որ չտայ տեղի որոյ և իցէ անդէպ իմացուածոյ. քանզի ակն յայտնի երևի անդէն միտք երգողին, որ յասելն անպատճառից՝ իմանայ զՈրդին և զՍ. Հոգին, որք են անսկիզբն. — և որոց պատճառաւ, իմանայ զարարածոց՝ զի պատճառաւեալք են։ Ուստի ի նմին տան բառն պատճառ՝ կրկին իմաստիւք վարի, իբրև սկիզբն՝ Որդւոյ և Ս. Հոգւոյն, և պատճառ՝ արարածոց։

Digitized by Google

Երկրորդ՝ պատճառ նշանակէ զարտադրող սկիզբն այլոյ ընդհանրապէս, առանց ինչ դնելոյ խտիր բնութեան, անկախ և առանց սկսուածոյ գոյութեան, և յայս միտս կոչէ զՀայր պատճառ Որդւոյ և Հոգւոյն, և ոչքս ասին պատճառաւորք, կամ ըստ Յունաց՝ պատճառեալք։ (Տես. Աւետիքեան Բառգիրք. շարակ. եր 390, յոդ. 252)։

3. Զյաւիտենական ծնունդն Որդւոյ ի Հօրէ՝ սուրբ Հարքն մեր և վարդապետք կոչեն երբեմն և բղխումն. զոր օրինակ և սուրբ Հարքն Արևելեան և Արևմտեան եկեղեցեաց։ Ըստ այսմ Շնորհալին ի դէմս Որդւոյն Աստուծոյ երգէ. «Բղխումն ի Հօրէ՝ բղխեա ի հոգւոյս, բան քեզ ի հաճոյս»։ Ժամագիրք եր 11։

4. Իսկ ի խորհուրդն Մարդեղութեան Բանին Աստուծոյ՝ յայտնապէս ուսուցին սուրբ Հարքն մեր և Վարդապետք ընդ կաթողիկէ Եկեղեցւոյ՝ մի անձն աստուածային ի Քրիստոս, ընդդէմ Նեստորի, — և երկուս բնութիւնս, աստուածային և մարդկային, ընդդէմ Եւտիքեայ. այս է, մի և նոյն Քրիստոս՝ կատարեալ Աստուած և կատարեալ մարդ։

Զգիտեմք եթէ ի գիրս եկեղեցական պաշտամանց այլոց ազգաց քրիստոնէից գտանիցին արդեօք այնքան վկայութիւնք, որովք ճոխացեալ առատանան մերքս։

Ո՞չ ապաքէն ի խորոց սրտէ քահանայն պատարագիչ զօրհնաբանող գոչէ առ Հայրն գթած. «Ո՛վ ոք պանծասցի բովանդակել բանիւ..... ետուր մեզ զՈրդիդ քո միածին՝ պարտապան և պարտս..... վասն զի եղեւ հաւաստեաւ և առանց ցնորից մարդ, և անշփոթ միութեամբ մարմնացեալ յԱստուածածնէ և ի սրբոյ կուսէն Մարիամայ, ճանապարհորդեաց ընդ ամենայն կիրս մարդկային կենցաղոյս առանց մեղաց».....։

Ի հաստատութիւն ճշմարտութեանս՝ շատ լիցի մեզ առատանօր ընծայել քաղուածոյ վկայութիւնս ի շարականաց։

— Մանուկ՝ անժամանակ ի Հօրէ, և ժամանակաւ գոյացեալ ծնեալ լինի Աստուած և մարդ։ Եր 1145։

Digitized by Google

— Ցաւալի քան զյաւիտեանս Որդի՛ն յաւիտենական, այսօր յերկրի երեւեալ Աստուած և մարդ կատարեալ։ Էջ 1166։

— Խոկացես Բանն Աստուած միացաւ ի մարմնի, անփոփոխ գոլով յէութեան։ Էջ 1130։

— Կենդանութեանց բաշխող Քրիստոս.... անօրինաբար արտասուելով.... որպէս մարդ հարցանէր, ո՞ւր եդիք զՂազարոս, — և որպէս զԱստուած՝ բարբառով յարուցանէր ի մեռելոց զչորեքօրեայն։ Էջ 299։

— Անսկզբնակից Հօր Որդի, որ այսօր նախասահմանեցելոյ բնութեամբ ի Կուսէն ծնար, Աստուած և մարդ, ողորմեա։ Էջ 1161։

— Զի կատարեալ էառ զբնութիւն Աստուածն Բան զմարդկութեան։ Էջ 167։

— Հուրն կենդանի որ ի մորենին վառեցաւ, զոր անմխաս յարգանդի քում կրեցեր և ծնար Աստուած և մարդ։ Էջ 1157։

— Առ քեզ պաղատիմք էակից Հօր Որդի, որ այսօր ի մսուր եդար և ի հրեշտակաց պաշտեցար, Աստուած և մարդ, ողորմեա։ Էջ 1161։

— Անեզրանելիդ Աստուած Բանդ անմեկնելիդ ի Հօրէ՝ ընդ ժամանակաւ լինել հաճեցար և մարմնացար ի սուրբ Կուսէն՝ Աստուած և մարդ յայտնեցար։ Ճշ. Մնդ. Ը. օր։

— Անսկիզբն Բանն յանսկզբնական ի Հօրէ, և սկզբնաւորեալ ի Կուսէն մարմնոյ զգեցմամբ, բովանդակելով յորովայնի և ընդ Հօր գոլով, և սահմանեալ ժամանակաւ ծնեալ լինի Աստուած և մարդ։ Էջ 1215։

— Մտեալ ընդ օրինօք անհիւթականն հողանիւթ գոլով, զի զհողածնեալքս՝ Հօրն ընծայեսցէ, Աստուածորդին որ ի ծոց Հօր, տղայ քառասնօրեայ բառնի ի գիրկս ծերունւոյն, և յայտնապէս ծանուցանի Աստուած և մարդ։ Էջ 1215։

— Որ առաւել քան զմարգարէս մեծ ի ծնունդս կանանց՝ որ զքեզ մեզ յայտնեաց Աստուած և մարդ յերկրի երեւեալ։ Էջ 587։

— Բանն անսկիզբն՝ ի Կուսէն սկզբնաւորեալ ի յերկրի մարմնով երեւեցաւ, զոր առաքեալքն քարոզք բանին ճշմարտութեան՝ և ծանուցին ափեղերաց Աստուած և մարդ։ Էջ 1130։

— Տանուցար ոխերերաց Աստուած և մարդ գոլով, մարմնացար ի սուրբ Կուսէն ի փրկութիւն ազգի մարդկան։ Էջ 7։

— Քարոզի ի սքանչելեաց Աստուած մարմնով վասն իմ խաչեալ, մերով բնութեամբս մեռանի, Աստուած անմահ խոստովանի։ Էջ 167։

— Տածկեալ խորհուրդն յաւիտենից լսեցելոյ և անճառելին, ի հասանել ժամանակին պարգևեցաւ մարդկան ազգին, էական բնութիւն Բանին խառնեալ անշփոթ ի մեր բնութիւն։ Էջ 963։

Ի գիշերային ժամանակացուցութեան երգեմք. «Զէակիցդ Հօր զՈրդի փառաւորեմք անլռելի, որ եղեր յորդանոյ Կուսին զադամայինն առեր մարմին»։ Ժամագիրք էջ 67։

Եւ ի ճաշու ժամու. «Երկնաւորացն անքննելի՝ եղեր մարդկան տեսանելի, զգեցար պատկեր հողեղինի՝ պատկերդ Հօր անփոփոխելի»։ Ժամագիրք էջ 187։

Զ. Ի վերայ այսքաններաց բացայայտ վկայութեանց կարեմք յաւելուլ զեւս բացայայտագոյնն՝ որ քաջ իսկ հաստատէ զնոյն ճշմարտութիւն ցայսվայր բացատրեալ, ուր ասի. Միացեալ բնութեամբ (այսինքն. իսկապէս, անձնաւորապէս, ճշմարտապէս) ի յերկուց (բնութեանց)[1]. (Էջ 940) և առ ի խելամուտ լինել՝ շատ է թէ ոք միտ դիցէ աստանօր ուղիղ իմաստից բառիդ բնութեամբ՝ ի լեզու հայկական, և ճշգիւ ի գործածական հոլով. (Տես. Հայկազ. Բառ. Ա. Հատ. էջ 499.)։ Քանզի այսու վարեցան Հարքն մեր ի ճառել զանճառ խորհրդոյ Մարդեղութեանն Քրիստոսի, և իմանային՝ Միացեալ անձնաւորապէս, իսկապէս ի յերկուց (բնութեանց)։ Եւ այս յայտ անտի է, զի բովանդակ տունն այն ուղղակի հակառակ է Նեստորի, ուր իսկ և իսկ յաւելու. Նզովեցին զՆեստոր և զաղանդն իւր պիղծ։ Քանզի Նեստոր դնէր ի Քրիստոս բարոյական եւեթ միաւորութիւն, իսկ յօրինող շարականին հերքէ զայն յաւելլն, ոչ բարոյապէս, այլ բնութեամբ, այս է՝ իսկապէս, ճշմարտապէս, անձնաւորապէս, ի կիր

1. Զայն բացատրութիւն առեալ է մերոյս ի Ս. Կիւրղէ աղեքսանդրացւոյ, Գիրք պարապմանց. ևս և Թուղթ առ Նեստոր. յէջսն 465, 466, և այլն։

արկեալ ընդդէմ Նեստորի զբացատրութիւն Ս. Կիւրղի Աղեքսանդրացւոյ :

Քանի՛ գեղեցիկ և սուրբ հայրապետն մեր Ներսէս Շնորհալի զայն դաւանութիւն Հայաստանեայց եկեղեցւոյ, աստուածաբան բանիւքն վարդապետեալ ուսուցանէ՝ գրելով առ մեծ Թագաւորն Հոռոմոց Կիր Մանուէլ, յամին 1170:

« Արդ և մեք ըստ ուղղափառաց Հարցն աւանդութեան Նզովեմք զայնոսիկ՝ որք վասն յեղման և այլայլութեան՝ մի բնութիւն ասեն Բանին մարմնացելոյ, կամ թէ՝ ոչ ի մերմէ զանգուածոյս առ զբնութիւն մարդկային, և միացոյց ընդ աստուածութեանն. այլ ինքն իւր ստեղծ մարմին յորովայնի Կուսին, կամ թէ յերկնից բերեալ, և կամ թէ առ աչօք երևեալ մարդ և ոչ ճշմարտութեամբ: Եւ որք այլ այսպիսի ինչ պատճառանօք ասեն զմի բնութիւնն ի Քրիստոս, և ո՛չ վասն անբաժանելի և անշփոթ միաւորութեանն:

Նոյնպէս նզովեմք և զայնոսիկ՝ որք ի յերկուս բնութիւնս բաժանեն զմի Քրիստոսն՝ ըստ Նեստորի, այլ ասելով զԱստուած, և այլ զմարդն. Զմարդն չարչարելի և մեռեալ, և զԱստուածն անչարչարելի և անմահ, և ոչ միաւորութեամբ առն զերկաքանչիւրսն, զչարչարանսն և զանչարչարութիւնն, զմահն և զանմահութիւնն:

Այլ մեք հաւատամք այսպէս, եթէ՝ Աստուածն Բան՝ որ ի Հօրէ ծնեալ յառաջ քան զամենայն յաւիտեանս, անտեսանելին, անչարչարելին, անմահն, էառ զմեր բնութիւնս կատարելապէս ի Կուսէն, և միացոյց ընդ իւր աստուածային բնութիւնն, անշփոթ և անբաժանելի միաւորութեամբ. և եղև անտեսանելին ըստ աստուածութեանն՝ տեսանելի ըստ մարդկային բնութեանս, և անշօշափելին՝ շօշափելի, և անչարչարելին և անմահն՝ ըստ աստուածային բնութեանն, չարչարեալ և մեռեալ մերով բնութեամբս, ոչ բաժանմամբ՝ որպէս թէ ոմն չարչարելի և ոմն անչարչարելի, ոմն անմահ և ոմն մեռեալ. Այլ որ չարչարելի և մեռեալ, մարդկայինն առեալ բնութեամբ, նոյն անչարչարելի և անմահ՝ աստուածային իւրով բնութեամբ: Վասն այնորիկ՝ և արիւն Աստուծոյ ասի, և չարչարանք և մահ, և Աստուած խաչեալ և որ այսպիսիք. զորս՝ ոչ առանձին բնութեանն Աստուծոյ տամք, այլ՝ անճառ միաւորութեան:

Եւ զոր օրինակ՝ յաղագս Աստուծոյ բնութեանն՝ անհնա-րին է չարչարանս ընդունել և մեռանել. նոյնպէս և մար-դոյ բնութեան առանձին՝ անկարելի է մահուամբ կեանս տալ մարդկան: Այսպէս՝ միաւորելովն Բանին Աստուծոյ ընդ մարդոյ բանականի բնութեան, անհնարելին՝ հնարաւոր ե-ղև, և անկարելին՝ կարելի:

Քանզի՝ չարչարեցաւ անչարչարելին՝ չարչարելեաւն, և մե-ռաւ անմահն՝ մահկանացուաւն, որով կենդանացոյց մարմին նորա և անդամքս, յօդեալք ի կենդանին և կենդանատուր գլուխն մեր Քրիստոս, որ է օրհնեալ յաւիտեանս. Ամէն »: (Տես Սահմանք Հաւատոյ Հայաստ. Եկեղ. գրեալ Ներսէս կաթ. Հայոց, ի խնդրոյ աստուածասէր Թագ. Հոռոմոց Էմ-մանուէլի: Տպ. Ս. Պետերբուրգ. 1788. էջ 143):

Այնպէս յիշեցուցանեմք և զոր զկնի պճնաշխարհիկ բանս նորին սրբոյ Հայրապետին՝ խօսելով զԲանէն մարմնացելոյ:

« Եւ որ ստորարիչ գոլով էիցս ըստ Աստուածութեանն ընդ Հօր, նոյն պարարած յաղագս մարդկութեանն՝ ըստ մեզ: Զոր և քարոզիչք Բանին՝ քարոզեն Աստուած և մարդ կա-տարեալ, գերագոյն միութեամբ միաւորեալ՝ քան զհոգի և զմարմին: Զի մարդկային ոգի ի ձեռս Հօր աւանդեալ՝ բա-ժանեցաւ ի մարմնոյն, բայց աստուածութիւնն՝ անբաժա-նելի մնաց յերկոցունցն, քանզի էր միացեալ ընդ բանակա-նի հոգւոյն, յորժամ էջն առ հոգիսն՝ որ ի դժոխս, և էր անմեկնելի ի մեռեալ մարմնոյն՝ որ ի գերեզմանն անդ, ոչ մասնաւորաբար, այլ բոլորն առ երկոսեան:

Վասն զի նոյն որ ի ծոց Հօր՝ և յորովայնի Կուսին, յա-թոռ փառաց՝ և ի մսուր, ընդ աջմէ Հօր՝ և ի խաչին, ի քրով-բէս՝ և ի գերեզմանի, զի լի են երկինք և երկիր՝ փառօք նորա, յարուցեալ յերրորդ յաւուր՝ յարութիւն մեր և կեանք, եւ յերկինս ունի ոչ երբէք պակասեաց »: Անդ էջ 122:

6. Ի պարզաբանել մեր զուգակշռական միտս բանից շա-րականաց մերոց, և ի ցուցանել զուղիղ վարդապետութիւնս բովանդակեալս ի նոսին, խոստովանելով ընդ սրբոյ Եկեղե-ցւոյ զՔրիստոս՝ Աստուած կատարեալ և մարդ կատարեալ, մի աւելորդ թուեսցի յիշատակել մեր սակաւոր որպէս ի հարեւանցի, զի Թէպէտ յանկարծ յերեքտասաներորդ փա-

ատարյութեան « Որ խաչեցար՝ » ոչ ի նախնեաց սրբոց Հարց մերոց մուծեալ իցէ, այլ՝ ըստ հասարակաց կարծեաց, առ-Թիւ շփոթութեանց և տարաձայնութեանց, սակայն ուղղա-դաւան Հայրապետք մեր և համագումար Սիւնհոդոսք՝ յայտ արարեալ են թէ Եկեղեցի Հայաստանեայց երգէ զՍուրբ Աստուածն ի դէմս Որդւոյն Աստուծոյ, յորում նախ խոս-տովանի զԲանն Աստուած՝ Աստուած սուրբ, Աստուած հզօր, Աստուած անմահ, ըստ աստուածութեանն. և ի յաւելուլն Որ խաչեցար [1], յայտնի քարոզէ զնոյն Բանն Աստուած՝ ըստ մարդկային բնութեանն խաչեալ, ըստ հոգերգողի բանից Շնորհալւոյն.

« Սոսկալիդ սերովբէից
Եւ ահաւորդ քրովբէից՝
Խոնարհեցար ի չարչարանս,
Չարչարելի բնութեամբ մարդկան.

Դարձեալ.

« Մերով բնութեամբքս մեռանի,
Աստուած անմահ խոստովանի »։

Ուստի Հայաստանեայց Եկեղեցի յերգելն զՍուրբ Աս-տուած ի դէմս Որդւոյն Աստուծոյ՝ դատապարտէ միանգա-մայն զՆեստոր և զԵւտիքէս և զԱստուածաչարչար աղանդա-ւորս։ Այս և զՈր խաչեցարն երգել՝ ոչ միայն ոչինչ օտար յուղիղ վարդապետութենէ Եկեղեցւոյ, այլ և հարկ ան-հրաժեշտ համարեալ է մերոց Հարց՝ առնել հանապազօր զդաւանութիւնս զայս՝ ի հաստատութիւն վարդապետու-թեան երկուց բնութեանցն ի Քրիստոս, և ի հերքումն ա-

1. Առ ի լաւ եւս յայտ առնել թէ՝ Եկեղեցի Հայաստանեայց ոչ երգէ զերեքսրբեան փառաբանութիւնն ի դէմս ամենասուրբ Երրորդու-թեան, ի չորեքտասաներորդի դարուն մուծեալ է սովորութիւն՝ փո-խանակ ոչ ի ողջոյլի երգել զխորհրդոյ հանդիսի աւուրցն ըստ պատ-շաճի, զոր օրինակ. — Որ ծնար և յայտնեցար. — Որ եկիր և գալոց ես. — Որ մատնեցար. — Որ խաչեցար. — Որ թաղեցար. — Որ յարեար ի մեռելոց. — Որ համբարձար փառօք առ Հայր. — Որ յայտ-նեցար ի Թաբոր լերինն. — Որ եկիր ի փոխումն մօր քո և կուսին. — Մինչ և յաւուր Պենտեկոստէի երգել ի դէմս Հոգւոյն Սրբոյ. — Որ եկիր և հանգեար յառաքեալսն։

Digitized by Google

ընդդաւորացն յիշատակելոց, Թող և զայլս այլս գեղեցիկ խորհրդական մեկնութիւնս, զոր օրինակ և ի Ժողովածն Տօնամի, Սօսյ և Առանայ՝ արարքն ի պատասխանի ամբաս-տանութեանցն զինդրոյս. որժամն արդարև խոհական և աստուածաբան մերոց նախնեաց:

Ի գեղեցկագունից ասաի մեկնութեանց գիտուք զորոյ Հայրապետին Ներսիսի Շնորհալւոյ, որ ի գրեշն առ Ալեքս Պրոտոսեբաստոր փեսայ կայսեր Մանուէլի Կոմնենոսի, ասէ. «Վասն երից սրբասացութեանցն գրեալ էր՝ զի խաչեցար ասեմք: Եթէ մեք զսրբասացութիւնս զայս ի դէմս Երրոր-դութեանն երգէաք՝ որպէս և դուք, չար և խորին մոլորու-թիւն էր ասել Թէ խաչեցար, այլ զի առ մի անձնաւորու-թիւնն Որդւոյ բարբառիմք զայսոսիկ, վասն այնորիկ զմե-ծագոյն երախտիսն՝ որ ի նմանէ առ մեզ եղեալ, գնեմք ա-ռաջի նորա. Թէ Աստուած և հզօր և անմահ որ մարմնով խաչեցար վասն մեր, ողորմեաց մեզ: Առ ընթեր նմին և զՄայր Բանին Աստուծոյ բարեխօս և միջնորդ ունիմք առ Միածինն իւր՝ ասելով Թէ մաղթեա զաղաչանս մեր Որդւոյ քոյ և Աստուծոյ մերոյ: Վասն որոյ՝ եթէ ի դէմս Երրոր-դութեանն ոչ ասիցէ՝ որպէս դուք, և եթէ ի դէմս Որդ-ւոյ միայն՝ որպէս մեք, երկոքեան հաճոյք են Աստուծոյ, յորժամ առանց հակառակութեան լինին ասացեալքն. այլ Թէ և յայսմ վայրի ի դէմս Որդւոյ ասեմք զսրբասացու-թիւնն, բայց ի սուրբ Պատարագին առ երիս անձնաւո-րութիւնսն զորօրհնեցն երգեմք զերգս»: (Տպագր. Ս. Պետեր-բուրգ. 1788. էջ 93):

Եւ առ կայսրն Մանուէլ Կոմնենոս զայս օրինակ խօսի. «Որպէս և երեքսրբեան փառաբանութիւնն՝ զոր Եկե-ղեցիք ձեր երից անձնաւորութեանցն մատուցանեն, և մեք ի դէմս Որդւոյ միայն, և երկոքին խորհրդականք և գեղե-ցիկք. յորժամ առանց հակառակութեան ոչ ունիցէ. իսկ հակառակութեամբն՝ հայհոյութեան եղեալ պատճառ՝ փո-խանակ փառաբանութեան: Զի ձերոցդ զմեզ զրպարտելով ա-սեն՝ զԵրրորդութիւնն ասէք խաչեալ. և մերքս ընդդիմա-բանելով Թէ՝ զխաչեալն վասն մեր՝ ոչ ասէք Աստուած՝ և հզօր՝ և անմահ ի մահուն, այլ մարդ սոսկ: Եւ երկոքին փութան յաղթել՝ ոչ բարւոք յաղթութեամբն միմեանց»: (Տպագր. Ս. Պետերբուրգ. 1788 էջ 130):

7. Ս. Հարք առհասարակ արևելեան և արևմտեան Եկեղեցեաց, որպէս և մերքս, ի կիր առնուն երբեմն զբառն խառնել, խառնումն, խառնարան, աստուածախառն մարմին, ի ճառելն զմիաւորութիւնն Բանին ընդ մարմնոյ. և այն՝ առ ի ցուցանել զանբաժանելին, զիսկականն, զանձնաւորականն, զճշմարիտ, և ուրպէս Ս. Կիւրեղ ասէ, զծայրագոյն միաւորութիւն Բանին ընդ մարդկային բնութեան. և զայդ ընդդէմ Նեստորի, որ, որպէս ասացաք, բարոյական ևեթ գնէր միաւորութիւն ի Քրիստոս: Քանզի բառս խառնել ոչ է նոյն ընդ խառնակել կամ շփոթել, այլ յաճախ ևս նշանակէ զօդել, միաւորել, որպէս ի Ս. Գիրս և առ նախնիս մեր տեսանի, ձեռն ընդ ձեռն խառնել. — Որ ընդ հողեղէն բնութեան մերոյ խառնեցեր զբանական հոգիս: Էջ 884: Վասն որոյ և առ ի զգուշութիւն չիմանալոյ զայն՝ խառնակութիւն կամ շփոթութիւն, յաճախ առ նմին եդին Ս. Հարքն մեր զբառսն ապականելի, նոր, հրաշալի, անճառ, անշփոթ և այլն, ի Գրիգորէ Աստուածաբանէ առեալ զբացատրութիւնս զայսոսիկ, յորմէ ոչ ինչ ընդհատ համարձակագոյնս ասաց և Ս. Աւգոստինոս. «Յայսմ անձին (ի Քրիստոս) խառնումն Աստուածոյ և մարդոյ», և Լևոն Մեծն «Բնութիւնն ընդ բնութեան խառնեցաւ»:

8. Ցասել Շնորհալւոյն յԱյսօր անճառն՝ զմարմին Քրիստոսի երկնաւոր և հոգևոր՝ հայի ի բան առաքելոյն. «Առաջին մարդն յերկրէ՝ հողեղէն, իսկ երկրորդ մարդն՝ տէր յերկնից (Ա. Կորն. ԺԵ. 47)։ Եւ յերկնից կամ երկնային, ոչ ըստ գոյացութեան մարմնոյն է իմանալ՝ իբր զի մարմին երկնաւոր ընկալեալ Քրիստոսի և ոչ զադամայինն. այլ զի նախ՝ մարմին նորա կազմեցաւ երկնային զօրութեամբ ի Հոգւոյն Սրբոյ. — երկրորդ՝ ըստ երկնաւոր և անմեղանչական սրբութեանն, որպէս իմանոյ Ռոպերտեան. — երրորդ՝ իբրև միաւորեալ ընդ երկնաւորին, այսինքն ընդ աստուածային բնութեանն։

Եւ կոչի հոգևոր, զի միաւորեալ է ընդ աստուածային իմանալի բնութեանն, և է բնակարան Հոգւոյն Սրբոյ, և յղացաւ նա յարգանդի սրբոյ Կուսին, անփոփոխական իմն ներգործութեամբ նորին Հոգւոյ, և նովին զօրութեամբ զօր

ամենայն յղանայ իմն և ծնանի ի վերայ Սեղանոյ Ս. Խորհրրդեան Հաղորդութեան. և զի Ճաշակեմք զայն հացեար իմն եղանակաւ Թէպէտ խորհրդաւոր, սակայն Ճշմարտապէս և իսկապէս հաղորդակցելով մարմնոյ և արեան Քրիստոսի, և ոչ մարմնապէս ըստ օրինի այլոց կերակրոց:

Յայսմ ամենայնի միաձայն վարդապետեն մեզ, որպէս և Ս. Ոսկեբերան, Գրիգոր Աստուածաբան, Ս. Հերոնիմոս, Ս. Թովմաս Աքուինացի և այլք բազումք:

9. Իսկ զմիտս շարականին, զոր երգեմք յաւուր Հինգշաբաթոջ ասելով՝ « Այսօր կանգնեցաւ աւազան մկրտութեան ի Թողութիւն մեղաց մերոց », էջ 393, ի յաջորդ տանն որդէն բացայայտ ցուցանէ՝ Թէ անդէն բանք են զոտնալուացէ, զի իսկ և իսկ յարէ. « Այսօր Տէրն մեր լուանայր զոտս աշակերտացն և պատուիրէր զայս »: Եւ արդարև Նիցն հրամայեալ ասելովն. « Եթէ ես լուացի զոտս ձեր, Տէրս և վարդապետս, և դուք պարտիք զմիմեանց ոտս լուանալ: Զի օրինակ մի ետու ձեզ, զի որպէս ես ձեզ արարի և դուք առնիջիք »: (Յովհ. ԺԳ. 14, 15): Ուստի աւազանաւ մկրտութեան իմանի ասելէն լուացարան կամ կոնք՝ որ անդ առընթեր կայ, յորում ոչ եթէ անկանուք երախայքն մկըրտին, այլ մկրտեալքն լուացեալ լինին, ի նշանակ խոնարհութեան և սիրոյ, և մաքրութեան ի մարմնական աղտից: Եւ եթէ ի հնումն լուանային զոտս երախայիցն ի պատրաստութիւն ընդունելոյ զմկրտութիւն, այն իսկ հաւաստի ցուցանէ՝ զի միշտ լուացումն ոտից որոշէր ի խորհրրդոյ մկրտութեան: — Թող և զայն՝ զի ի մերս լեզու մկրտութիւն նշանակէ եւ լուացումն, որպէս յայտ է ի բանից. « Մկրտութիւնս սափորաց .... » (Մարկոս Է. 4): Որով ոչ են անդ բանք զխորհրդոյ կամ զաւազանէ մկրտութեան և ոչ զԹողութենէ սկզբնական մեղաց: Եւ արդարև ոչ ոք մինչև ցայժմ համարեցաւ երբեք Թէ Ոտնալուայիւ յաւուր Հինգշաբաթոջ պաշտեսցի խորհուրդն մկրտութեան, և այնու լուացմամբ ոտիցն՝ լիցի Թողութիւն սկզբնական մեղաց: Նա՛ զի և ի մատակարարութեան սրբոյ խորհրդոյ Մկրտութեան՝ բնաւ ոչ երգի այս տուն շարականիս:

Իսկ Թէ զիարդ լուացումն ոտից լինէր ի բողոքականս մե-

ղաց, համառօտիւ ասասցուք. զի Թէ լուացումն ոտիցն համարեսցի արարեալ յԵկեղեցւոյ ըստ օրինակին Քրիստոսի, որպէս սրբազան ինչ արարողութիւն պաշտամամբք աղօթից և ընթերցուածոց, մարթի ասելն մեզ եթէ թողուլ զմեղս ներելիս. քանզի յարարողութեան անդ կատարի խոնարհութիւն, սէր, միաբանական հաշտութիւն, և յարգութիւն աստուածային պաշտաման. և ամքա ներգործութիւնք գոլով առաքինականք, ընդունին ինքնին զԹողութիւն մեղաց, ոչ ի գործոյ գործեցելոյ՝ այլ գործողին, այսինքն՝ արարողութեանս որ սրբի աղօթիւք Եկեղեցւոյ, ածէ ի գութ զմարդասէրն Աստուած՝ Թողութիւն մեղաց շնորհել այնոցիկ, որք հաւատով և երկիւղած մտօք յայն լուացումն մատչիցին. (Տես Աւետիքեան Բացատր. շարակ. էջ 232–238)։ Զոյն զայս վարդապետութիւն ասկս այլոց Խորհրդականաց առ հասարակ ուսուցանեն ուղղափառ վարդապետք։ (Տես Ս. Ալփոնսոս, Բարոյական աստուածաբանութիւն, գիրք Զ. §. 90. են). — Եւ Ս. Բեռնարդոս ի բանն Յաղագս ընթրեաց Տեառն՝ ասէ. «Զի մի ընդ Թողութիւն որ ըստ օրէ յանցմանցն երկբայիցիմք, ունիմք զխորհուրդ նորա, զոտիցն լուացումն»։ (Տես Համար 4)։

10. Վարդապետէ եկեղեցի զՀոգին Սուրբ բղխեալ ի Հօրէ և յՈրդւոյ ի յաւիտենից, միակ փչմամբ յերկոցունց՝ իբր ի միոջէ սկզբանէ։

Երգեն նոյնպէս և Հարքն մեր զՀոգին Սուրբ բղխեալ ի Հօրէ և յՈրդւոյ։

— Նոյն և նման Հօր և Որդւոյ, Հոգիդ անեղ և համագոյ, բղխումն Հօր անքննաբար առող յՈրդւոյ անճառաբար։ Էջ 775։

— Ելեր Տէր առ Հայր փառօք ի յերկինս, և մխիթարիչ առաքելոց առաքեցեր Սուրբ զՀոգիդ։ Էջ 800։

— Աղբիւր կենաց և փրկութեան մերոյ, Հոգի Հօր և Որդւոյ։ Էջ 983։

— Ի հարաշարժ աղբերէն անհատահոսք վտակ՝ կենդանարար Սուրբ Հոգի։ Էջ 811։

— Որ ի հարաշարժ ի յաղբերէն յառաջ բղխեալ անհատաբար ի յՈրդւոյ աերապէս սուրբ Հոգին։ Ճաշ. Պենտակոստէի.

— Որ ես պատճառ Որդւոյ ծննդեանն, Հայր, յառաջ քան զյաւիտեանս, յորմէ Հոգին ճառագայթեալ անորիշ բաժանմամբ։ Էջ 792։

— Աստուած աներ անժամանակ, Հայր անսկիզբն և անքանակ. Որդւոյ պատճառ ծննդեանն անճառ՝ Հոգւոյ բըղխումն աղբերաբար։ Ժամագիրք էջ 66։

Որպէս յայտ է, ի Շարականացն սակաւ է յոյժ թիւ շարականաց Հոգւոյն Սրբոյ, յոր սակս և վկայութիւնքս սակաւք են թուով։ Սակայն ի հանապազօրեայ ի ժամասացութեան բազում աղօթք են առ Որդին, զորս կրկնեմք քանիցս և երեկոյս յաւուր՝ ասելով. « Որում (Որդւոյդ) վայելէ փառք, իշխանութիւն... ընդ Հօր և ընդ Սուրբ Հոգւոյդ »։ Զօր ամենայն պաշտեմք ի ժամասացութեան զհրաշալի աղօթս առ Որդին. « Աստուած մշտնջենաւոր, Աստուած յաւիտենական, որ ի սուրբն աշխարհս լոյս ծագեցեր, և լուսաւորեցեր զմեզ ի խաւարային մեղաց մերոց, որ վասն մե՛ր ի չափաւորութիւն եկիր անչափդ Աստուած, և հեղեալ ծաւալեցեր զշնորհս Հոգւոյդ Սրբոյ յարարածս քո, այժմ և յաւիտեանս ժամանակաց բարեբանեալ ես, ամենամեծդ Աստուած, ընդ Հօր և ամենասուրբ Հոգւոյդ » Ժամ. էջ 177։ Արդ չմարթէր ասել առ Որդին՝ Հոգւոյդ Սրբոյ, և ոչ լինէր Հոգի Որդւոյ, եթէ ոչ Հոգին բղխէր և յՈրդւոյ։

Իսկ արտաքոյ շարականաց բազումք են անժխտելի և բացայայտ վկայութիւնք ի գիրս Հարց մերոց՝ ի հաստատութիւն ուղղափառ վարդապետութեանս. զի նախնիքն մեր քարոզեն բարձրաբարբառ զնոյն ընդ Եկեղեցւոյ, որպէս Ս. Լուսաւորիչ՝ յԱգաթանգեղեայ գիրսն, Եղիշէ՝ ի Մեկնութիւնսն, Մամբրէ՝ ի Ճառն Յարութեան Ղազարու, Խոսրով Անձևացի՝ ի Մեկն. Ժամագրոց, Աղօթք Պենտակոստէի ի Ճաշոց գիրսն, — Քարոզք Տիրակալանու Բ. յամին 862, — Սոյ՝ յամին 1251, յաւուրս Իննովկենտեայ Դ. — Մխիթարայ կաթողիկոսի՝ յաւուրս Բենեդիկտոսի ԺԲ. զոր մանրապատում անէ Կիրակոս պատմիչ, և այլն։

Յաւել և զայս՝ զի լռելն ոչ միշտ ուրանալ կամ ժխտել նշանակէ. նմին իրի յասել Հարց՝ որ (Ս. Հոգին) ի Հօրէ բղխի, ոչ մերժեն այդու զբղխումն Հոգւոյն և յՈրդւոյ, զոր ի նախակարգեալ օրինակս բացայայտ ուսուցանեն. զի

բազումք յերգոց մերոց չափաւ յօրինեալ գոլով. չներեն յոլով ուրեք զյաւելուածն և յՍրբոյ, որպէս յՏիրուհւոյն։

11. Վասն բառին Անհարսնացեալ՝ չառ լիցի սակս այսչափ միայն. զի Հարք Յունաց և մերքս առեալ Անհարսնացեալ կոչեն զՍ. Կոյսն, առ ի մերժելոյ ի բաց ի նմանէ զամենայն ստուեր ամուսնութեան կամ հարսանեաց։ Զի առ մեզ ա-մուսնութիւն և հարսանիք համանիշք են, որպէս զի զբան Առաքելոյն, «Պատուական է ամուսնութիւն», թարգմանել նախնեաց մերոց «Պատուական են հարսանիք». (Ոսկ. Մեկն. Մատթ. — Կիւր. Կոչ. ընծ.)։ Քանզի կոյսն Մա-րիամ պատկեալ եւեթ էր ընդ Յովսեփայ, և ոչ ամուսնա-ցեալ ընդ նմա. նմին իրի որպէս կոչեն զնա յոյն սուրբ Հարք՝ ἀνύμφευτος, և լատինք innupta, նոյնպէս և առ մեզ ասի անհարսնացեալ. — և ի կոչել իսկ հարսն զՏիրա-մայրն, յաւելուն միշտ մերքն զբառն անփորձ, այսինքն միշտ կոյս։

12. Ճառելով զԵկեղեցւոյն Քրիստոսի՝ չիք երկբայել զհա-մաձայնութենէ վարդապետութեան Ս. Հարցն մերոց և Վարդապետաց ընդ կաթողիկէ ուղղափառ Եկեղեցւոյ։ Վար-դապետէ Եկեղեցի՝ Քրիստոսի Տեառն մերոյ հաստատեալ զԵկեղեցի իւր ի վերայ Պետրոսի առաքելապետի և տուեալ նմին զփականս արքայութեան երկնից, և նովաւ յաջորդացն՝ Քահանայապետաց Հռովմայ՝ իշխանութիւն արածելոյ զհօտ իւր բովանդակ, զկաթողիկէ եկեղեցի համօրէն։

Երգեն Հարքն մեր և հաստատեն լինել զՍ. Պետրոս գլուխ սուրբ հաւատոյ, գլուխ առաքելոց, գերագոյն առա-քելոց, հիմն եկեղեցւոյ, վէմ եկեղեցւոյ, վէմ հաւատոյ, վէմ անշարժելի, փակող արքայութեան երկնից, ունող զփականս արքայութեան երկնից։

— Որ գերագոյն ընտրելոց առաքելոցն դասուց անուա-նեցեր լինել զերանելին զՊետրոս, գլուխ սուրբ հաւատոյ, հիմն եկեղեցւոյ։ Էջ 888։

— Որ դալարեամբ քո վերածեր զմեզ յաշխարհական մե-ղաց ծովէս, ապաւորեալ լրմամբ ուռկանի վիմին հաւատոյ։ Էջ 207։

Digitized by Google

— Գիշերն ընթերցեալ հօտին փոքու՝ սաստէր զխորհուրդն ոչ գիտելոյ, որով դառնայր և հնազանդէր։ Էջ 164։

— Շնորհեալ միմիւն եկեղեցւոյ, զոր պահեցէր ի հասելոյ, և կանգնեցէր ի գլորելոյ։ Էջ 168։

— Մեծն հաւատոյ զմայլեալ անմահական բաժակաւն այսօր՝ բաշխէր ծարաւեաց։ Էջ 793։

— Այսօր միմիւն հաւատոյ և Յովհաննու սիրելւոյ, ընդ հակառակս ընթացեալ։ Էջ 533։

— Այսօր զմեծն հաւատոյ շարժեալ փորձողին խաբէութեան մարտ առ ի քէն թողացուցեալ, զմարդկային ակարութիւնս յանդիմանելով։ Էջ 436։

— Որ խոստացար տալ զփականս արքայութեան երկնից երանելւոյն Պետրոսի, որ հրաւիրեաց զմեզ ի յոյս կենացն յաւիտենից։ Էջ 891։

— Փակողն արքայութեան երկնից սուրբ առաքելոյն Պետրոս, արութեամբ ժուժկալեալ քեզ խաչակցեցաւ։ Էջ 891։

— Որ զէութիւն անճառելւոյ Միածնին յայտնութեամբ Հօր ի վերուստ դաւանեալ, և երանական արժանացեալ շնորհի, վէմ անսասանելի ի դրանց դժոխոց։ Էջ 887։

— Որ զանճառելի խորհուրդ Սուրբ Երրորդութեանդ՝ Սիմոնի միմի ծանուցեր։ (Մկ. Վարդավառի Ա. օր)։

— Այսօր միմիւն հաւատոյ յայտնեալ զխորհուրդ Երրորդութեան՝ երրակի յօրինմամբ տաղաւարացն խորհրդոյ։ Էջ 917։

— Կեցո զորդի ծառայի քո, զոր ի Հռովմայ դահիճն վերապատուեցեր, ուր եդին զմեծն հաւատոյ հիման սուրբ Եկեղեցւոյ։ Էջ 847։

13. Յետ այսքանի բացայայտ վկայութեանց ի Շարականէ՝ գլխաւորութեանն առաքելապետին Պետրոսի, ինքնին պարզի իմաստք Կանոնի առաքելոյն Յակոբայ, « Սա եղև գլուխ առաքելոց որոց ». (Էջ 1117)։ Յայտ է՝ թէ չէ պարտ իմանալ գովքն բանիւք՝ որպէս թէ իցէ Յակոբայ (եղբօր Տեառն) իշխանութիւն ի վերայ առաքելոց, այլ և ոչ ի վնաս և հակառակ գլխաւորութեան առաքելապետին Պետրոսի. քանզի և չմարթէր Հայաստանեայց եկեղեցւոյ, առանց հակառակելոյ ինքեան, ընդունել և ընծայել առաքելոց կրկին գլուխս



Digitized by Google

միանգամայն։ Այլ զբանն առաքելոց՝ պարտ է իմանալ ան-
դանօր աշակերտաց. որպէս իմանայ և Ս. Եփրեմ, որ ի
Թղթ. Պաւղ. առ Կորնթ. Ա. Գլ. ԺԵ. 7. ի բանն. «Եւ
ապա երևեցաւ Յակոբայ, ապա առաքելոցն ամենեցուն»
այսպէս ասէ, «Եւ յետ երևելոյ Յակոբու և ամենայն ա-
ռաքելոց, այսինքն եօթանասնից և երկոտասանից». (Մատենագր.
Հա. Գ)։ Եւ զգլուխ իմանալի է առաջին կամ երևելի ի դասու
աշակերտաց, և զգլուխ նոցին։ Քանզի գոլով նորա որդւոյ և
եղբայր Տեառն կոչեցեալ, որպէս հաստատէ և երգս ասելովն
«Եւ կոչեցաւ եղբայր Տեառն ի տանէ Դաւթի», և պա-
տուեալ յաչս Առաքելոցն՝ առաջին եպիսկոպոս կարգի Ե-
րուսաղեմի, երբ երևելի ի նոսա, զոր և Ս. Պաւղոս «սիւն»
կոչէ. և զի դասնէին բազումք յաշակերտաց Քրիստոսի յԵ-
րուսաղէմ, որք հպատակք էին Յակոբայ առաքելոյն՝ իբրև
միջնակաւորի՝ յայն սակս կոչէ զնա գլուխ նոցա։ Զայս այս-
պէս իմանայ և Ս. Թովմաս Ագուինացի ի մեկնելն զԹ տուն
Բ. Գլխոյ Թղթ. Պաւղոսի առ Գաղատացիս, և գրէ թէ
կարգի Յակոբոս յառաջնագոյն, զի եպիսկոպոս էր Երու-
սաղեմի։ Որպէս և Հարք մեր ոչ միայն զեօթանասուն և զեր-
կու աշակերտսն կոչեն առաքեալս, այլ և զաշակերտս Պաւ-
ղոսի, որպէս զՏիմոթէոս և զՏիտոս, են։ Եւ զի զՅակոբոս
զայս՝ որդւոյ և եղբայր Տեառն կոչեցեալ՝ և ոչ իսկ ի համա-
րի երկոտասան առաքելոց կարգէ մերս եկեղեցի, ընդ արև-
ելեան Հարս և ընդ նախնիս ոմանս յարևմտեայց, այլ առա-
ջին եօթանասուն և երկուց աշակերտացն Քրիստոսի. որով
չկարէին զաշակերտս մի յեօթանասնից անուն՝ համարել գլուխ
երկոտասան առաքելոյն։

14. Յօրինող չարականի Թէոդոսի Թագաւորին՝ ասէ զամա-
նէ, հիմնեցոյց զեկեղեցի, հիմնադիր սուրբ հաւատոյ, որ
ոչ նշանակէ՝ թէ աշխարհական Թագաւորն հիմնէ զեկեղեցի
կամ զհաւատս ուղղակի և անմիջաբար։ Այլ իմաստ բանիցն
է, երբ զի բարեպաշտ Թագաւորք յայնմ ամենայնի՝ յոր
ինչ կարող էր աշխարհական իշխանութիւնն, ջանացին այ-
նու ձեռնտու լինել սրբոց Հարց՝ ի վանել զմոլորութիւն հեր-
ձուածողաց և հաստատել զեկեղեցի կամ զհաւատս, որպէս
նոյն չարական դնէ։ Եւ այս յայտ անտի է՝ զի չարականս

Digitized by Google

չառէ պարզաբար հիմնել, այլ չափաւորէ յաւելուածովն աղօթից կամ բարեպաշտութեամբ հիմնեցոյց։ — Եւ այլ ուր չարակամքն բազմայայտ քարոզեն թէ ո՞ հիմն իցէ եկեղեցւոյ կամ հաւատոյ։

15. Ըստ վարդապետութեան Կաթողիկէ Եկեղեցւոյ, եթէ յետ մահուն իսկ և իսկ լինի հատուցումն արդար դատաստանաւ. այսինքն, զի հոգիք արդարոց՝ մտանեն առժամայն յերկինս՝ ի դէմ յանդիման տեսութիւն Աստուծոյ, — և որոց կարօտիցին մաքրութեան՝ սրբին ի Քաւարանի, — և մեղաւորք մեռեալք ի մահուչափ մեղս՝ իջանեն ի դըժոխս, երգեն և Հարքն մեր և հաստատեն զդէմ յանդիման տեսութիւն Սրբոց նոյնհետայն զկնի մահուն, և միանգամայն քարոզեն ըստ Կաթողիկէ Եկեղեցւոյ զվարդապետութիւն Բարեխօսութեան սրբոց և զՅարգութիւն Նշխարաց նոցին, ընդդէմ բողոքական աղանդոյ։

— Որ անպարագրելի աստուածութեամբդ անուղ և բարեխօս իւր ուխտաւորաց։ Էջ 1127։

— Որք ի մահուան իւրեանց կենդանեացան եղեն ի կամարն երկնից, խառնեցան ի դասնդ զուարթնոցն, նոցա բարեխօսութեամբ ողորմեա։ Էջ 93։

— Այսօր հրաւիրեցաւ յերկնից արքայութիւնն սուրբն Հռիփսիմէ։ Էջ 288։

— Որ զանիկնութեանն քո Թողեր զփառս, և աստուածայինն փառացն զարդարեցար, այսօր դասակցեալ ընդ զըւարթունս երկնից, վասն մեր առ Տէր բարեխօսեա։ Էջ 929։

— Զօրութեանց և տէրութեանց, իշխանութեանց և պետութեանց և ամենայն անուանելեաց՝ որք ի յերկինս՝ պաշտօնեայք, ընկալ Քրիստոս ուրախութեամբ զմեզ յօր մահու և յարութեան, ընդ նոսին օրհնել Հոգւովդ զքեզ՝ ընդ Հօր փառաւորելովդ։ Ժամագիրք էջ 168։

— Աջ Տեառն ի վերայ սրբոց իւրոց և փառք իւր հանգուցեալ է յոսկերս նոցա, և հոգիք նոցա դասաւորեալք ընդ հրեշտակս ի յերկինս։ Էջ 104։

— Զայն բարբառոյ յանապատի զլխատեալ այսօր ի Հերովդէայ, վերափոխեցաւ ի դասս անմարմնոց, աղօթիւք սորա լուր մեզ։ Էջ 557։

**

— Իիւթական մարմնով յերկրի յաշակերտաց քոց պարածածկեալ, և աննիւթական հոգւով ընդ Քրիստոսի յարքայութիւնն երկնից վերափոխեցար, առ Քրիստոս բարեխօսեա։ Էջ 1191։

— Այսօր բացեալ եղեն դրունք վերին Երուսաղեմի, կոչելով սուրբ զքառասունսն յանձնառ ի փառսն և յանպատում ի կեանս։ (Ճաշ. Քառասուն մանկանց)։

— Անմոռաց յիշմամբ առաջի Քրիստոսի՝ օգնական լեր տօնողացս զյիշատակս քո։ Էջ 1195։

— Որ ընկալար ի կեանս անապականս զերջանիկ սուրբ զառաքեալսն և դասեցոյց ի խորանս լուսեղէնս։ Էջ 1134։

— Որ քոյին առաքինասէր ճգնութեամբդ վերափոխեցար ի լուսեղէն յերկնային խորանսն, Տէր սուրբ Գրիգոր, անդադար բարեխօսեա վասն անձանց մերոց։ Էջ 838։

— Վեհագոյն սրովբէից և բարձրագոյն քերովբէից վերհամբարձար ի բարձունս յեղականաց անհպելին, փառաւորեալ ընդ Միածնին հրճուողական ձայնիւ երգոց։ Էջ 965։

— Արդ եկայք հաւատացեալք, կատարեսցուք զյիշատակ սոցա, քանզի սոքա են մեզ բարեխօս յարքայութեան։ Էջ 104։

Իսկ որ զկնի օրինակքն՝ քարոզեն յայտնապէս, թէ հոգիք ննջեցելոց ի Քաւարանի կամ ի Մաքրարանի՝ կարօտին աղօթից մերոց, և յետ սրբելոյն անդէն՝ սլացեալ խառնին ի դասս զուարթնոց և սրբոց յարքայութեան։ Ցոյն սակս և Եկեղեցի Հայաստանեայց, բաց ի պաշտամանց ննջեցելոց՝ զորս յաճախ կատարէ, նա և զամենայն ուրբաթս նուիրեալ է յիշատակի նոցին և աղօթէ վասն նոցա։

— Որ անճառ անօրէնութեամբ ի փրկութիւն ազգի մարդկան խոնարհեցար Բանդ Աստուած, այսօր հանգո և զմեր զննջեցեալսն ընդ սուրբս քո։ Էջ 132։

— Որ Թագաւորդ ես Թագաւորաց..., այսօր մարդասիրութեամբդ քո զննջեցեալսն մեր ընկալ, և հանգո ընդ սուրբս քո։ Էջ 134։

— Քրիստոս, բանաւորաց զաղաչանս առաջի քո հեղեալ մաղթեմք, հանգո զհոգիս ննջեցելոց ընդ սուրբս քո։ Էջ. 137։

— Ի քաղաք Տեառն զօրութեանց և ի քաղաք Թագաւո-

րին մեծի, ուր ժողովք սրբոցն են ի խաղաղութեան, գնաս-ցես յաւուրն և հանդիպես ընդ հրեշտակաց դասս՝ տեսանել զայսն յաւիտենից։ Ննջեցելոց ԲԿ։

— Միաբան հայցեմք ի քէն Սուրբ Հայրդ կենդանարար, աղաչանօք սուրբ Աստուածածնին, արա արժանի և զմեր ննջեցեալսն մտանել ի յերկնային քո սուրբ առագաստ, և ընդ վերին զօրսն օրհնել սուրբ զԵրրորդութիւնդ։ Էջ 146։

— Բարգաւաճ փառաց... Թող զմեղս մեր ննջեցելոցն, և հանգո ի խորանի քում ի յարքայական ի հանգստեան։ Էջ 147։

— Ի հանգիստ քո Տէր, ուր ամենայն սուրբք քո հանգ-չին, հանգո զհոգիս ծառայից քոց ընդ սուրբս քո, մար-դասէր։ Էջ 148։

— Զորս հաւատարմեցեր ընդ սուրբս քո՝ հաղորդիլ մար-մնոյ և արեան քո, Տէր, այսօր ընկալեալ հանգո զհոգիս նո-ցա կենդանագործելով ի կեանս յաւիտենից։ Էջ 184։

— Աւ ծնեալդ ի քէն մեծ բարեխօսեա անդադար հայց-մամբ՝ շնորհել զթողութիւն մեր ննջեցելոցն։ Էջ 144։

— Ահեղ խորհուրդ քահանայից բազկատարած կայր ի մէջ տաճարի սուրբ սեղանոյն, հուր շիջանի, խաւար մերժի, արձակել հոգիքն ուրախանան, զի թողութիւն մեղաց լինի, ողորմած Տէր, ողորմեա հոգւոցն մեր ննջեցելոց։ Ժամ. 72. (Տես և յԱստուած անեղ երգն՝ ժողովեալքս ի հրաժա-րում... Ժամագիրք էջ 68)։

Զնոյն վարդապետեն բաց ի Շարականաց, Ս. Լուսաւո-րիչն ի Յաճախապատում գիրսն, Խոսրով Անձևացի ի Մեկն. Պատարագի, Ժողով Մխիթարայ կաթողիկոսի և Ներսէս պատասխանի առ Բենեդիկտոս ԺԲ։

Եւ եթէ երբեք աղօթք մեր կամ Շարականք վասն ննջե-ցելոց՝ ակնարկեն ի վերջին ընդհանրական դատաստան, զվճ-ռահատ դատաստանն զայն առաջի աչաց դնեն հաւատացելոց՝ առ ի յիշատակաւ նորին յորդորել զնոսա ի ջանս արժանի լինելոյ զուարթերես կալ յաջմէ Քրիստոսի ընդ սուրբս։ Դարձեալ, խնդրեն յԱստուծոյ զբոլորական հատուցումն բարի՝ վասն ննջեցելոց, այսինքն, ըստ հոգւոյ և ըստ մար-մնոյ, որ լինելոց է յընդհանրական դատաստանի։

Իսկ յաղագս գեհենի շատ լիցին օրինակք ինչ քաղեալք։

— Դողան երկինք և երկիր յահէ փառաց Քրիստոսի, հուր բորբոքեալ ընթանայ բոցակիզէ զմեղաւորսն։ Էջ 139։

— Ջրնկղմեալքս յահագին մեղաց ծովուս, ապրեցո ի գեհենոյն։ Էջ 138։

— Բարեաց գործողքն պսակին, չարեացն ի հուր անշէջ մատնին։ Ժամագիրք էջ 71։

— Աղաչանօք Աստուածածնին շիջո ի մէնջ զբոց հնոցին։ Ժամագիրք էջ 170։

— Հաւատացեալքն ի քեզ բերկրին և ուրացողքն կծեա֊ցին։ Ժամագիրք էջ 70։

— Իջաք մինչ ի դժոխս ընկղմեալք յանօրէնութեան մերում, Տէր, յիշեա զգինս արեան Որդւոյ քո և ողորմեա։ Էջ 116։

— Զի մի ընդ մեծատանն հայցեսցուք ի բոց հնոցին՝ ծա֊գիւ մատին ջուր ի զովացումն։ Էջ 239։

Թէպէտև յիշատակեալ երեքին վիճակքն, յորոց ի մին կամ ի միւսն կայ մտանել մարդոյ իսկ և իսկ զկնի մահուն, ցուցանեն յայտ յանդիման զգոյութիւն առանձնական դա֊տաստանի, քանզի առանց այնր ոչ զոք ընդունի Աստուած յարքայութիւն, կամ արկանէ ի քաւարան, և կամ ի հուրն անշէջ, սակայն հանդերձ այսու՝ ի հաստատութիւն և այդր դատաստանի՝ շատ իցէ մեզ բերել ի մէջ զբանս, զոր ուսոյց մեզ Ս. Ներսէս Հայրապետն մեր երգել ի գիշերային ժամ֊ասացութեան (էջ 14)։ «Փութացիր անձն իմ փախչել ի չարեաց, փափաքել բարեաց։ Քեզ միշտ մերձ ծանիր քուն մահու եկեալ, քննող դատաւոր, Տէր ողորմեա, Տէր ողոր֊մեա, Տէր ողորմեա։ Աստուածածնին բարեխօսութեամբն յիշեա Տէր և ողորմեա»։

---

Ի նորոգ տպագրութեան Շարականաց և Կարգաւորութեան Հասարակաց աղօթից, ի Հարց մերոց սրբոց և ի Վարդա֊պետաց յօրինելոց, սակս ի նախկին տպագիրս ինչ ինչ քննու֊թեան գոլոյ կարօտք, հարկ էր առնուլ անդրէն ի քնին և ճշդել խնամով. առ որ ոչ սակաւ աշխատ եղեաք. հա֊

Digitized by Google

Համեմատելով շարագիրս ընդ հին և ընտիր գրչագիրս Շարա-կանց, Ժամագրոց և Տօնացուցից՝ որ ի մատենադարանի վանացս. և ի զանազան ընթերցուածոց անտի ընարեալ եդաք զայնս ևեթ ի մերում տպագրութեան, յորս միա-բանք էին գրչագիրք ամենայն, կամ յոլովագոյնք և ըն-տրելագոյնք ի նոցանէ։ Դարձեալ, զնորութիւնս ինչ մու-ծեալս ի տպագիր Տօնացոյցս ի վերջս անցելոյ դարուն, ան-միտաբանս կարգաւորութեան սրբազան պաշտամանցս, ի բաց թողաք, նշանակելով ի գիտելիս. յոր սակս և գտանին ի սմա տարբերութիւնք ինչ մանունք յայնցանէ։

Յաւելցուք զեկուցանել և զայս, զի սակս առձեռն գոր-ծելոյ և ամփոփելոյ ի մի հատոր, ոմանք ի մեծ աղօթիցն աւուրց տէրունականաց և օրհնութիւնք գերեզմանաց, զորս գնեմք ի ցուցակին, և զորդիս չէք սովորութիւն պաշտել ի ժամասացութեան, թողեալք են ի բաց, զորս թէ ոք կամիցի առնել՝ գտցէ ի Ճաշոցի։

Դարձեալ. Թիւ խաղիցն շարականաց՝ բազմապատիկ առա-ւել է քան զոր ցայսվայր գտանէին ի տպագիր շարակնս, յե-ղեալ ի ձեռն նորութիւնս ոչ սակաւս, ըստ նմանութեան ձեռագրաց. զոր է տեսանել ակներև ի ցանկի անդ. Թո՛ղ է զայլ անթիւ զընդ միմեանս յարմարութիւնս՝ զորովք զանց արարաք կարգել ի ցուցակիս, և զանեղափոխութիւն նոցին այսր անդր, հետևելով Ճշգրիտ համեմատութեան հնագունիցն ընտիր ձեռագրաց և Հեթմոյ Բ. արքայի շա-րականին մանաւանդ, որ թերևս բնաւից ընտրելագոյնն է՝ և՛ ըստ Ճարտար գրչութեան և ըստ արուեստի երգեցողու-թեան, որ և հրաշալի ի հմտացն ասացաւ։

Ընծայել մեր զսրբազանս մատեան ի պէտս ուխտի ման-կանց Եկեղեցւոյ, համակ զուշ և զակն կառուցեալ է մեր ի փառս միոյն Աստուծոյ, ի պայծառութիւն ուղղափառ կրօնիցս. և ի պարծանս Հարց սրբոց և աստուածաշնորհ վարդապետացս։

---

# ԿԱՐԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ

# ՀԱՍԱՐԱԿԱՑ ԱՂՕԹԻՑ

## ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ ԵԿԵՂԵՑՒՈՅ

### ՈՐ ԿԱՏԱՐԻ Ի ՄԷՋ ԳԻՇԵՐԻ Ի ԴԷՄՍ ՀՕՐ ԱՍՏՈՒԾՈՅ



*Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս. ամէն։*

*Հայր մեր որ յերկինս, սուրբ եղիցի անուն քո. եկեսցէ արքայութիւն քո. եղիցին կամք քո որպէս յերկինս և յերկրի։ Զհաց մեր հանապազորդ տուր մեզ այսօր. և թող մեզ զպարտիս մեր, որպէս և մեք թողումք մերոց պարտապանաց. և մի՛ տանիր զմեզ ի փորձութիւն, այլ փրկեա զմեզ ի չարէն։ Զի քո է արքայութիւն և զօրութիւն և փառք յաւիտեանս. ամէն։*

*Տէր եթէ զշրթունս իմ բանաս, բերան իմ երգեսցէ զօրհնութիւնս քո։*
*Տէր եթէ զշրթունս իմ բանաս, բերան իմ երգեսցէ զօրհնութիւնս քո։*
*Օրհնեալ համագոյ և միասնական անբաժանելի սուրբ Երրորդութիւնն՝ Հայր և Որդի և Հոգի սուրբ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։*

*Տէր, զի՞ բազում եղեն նեղիչք իմ. և բազումք յարեան ի վերայ իմ։*
*Բազումք ասէին զանձնէ իմմէ, թէ չիք փրկութիւն սորա առ Աստուած իւր։*
*Այլ դու Տէր օգնական իմ ես, փառք իմ և բարձրացուցիչ գլխոյ իմոյ։*

Digitized by Google

Ձայնիւ իմով ես առ Տէր կարդացի, և լուաւ ինձ ի լեռնէ սրբոյ իւրմէ։

Ես ննջեցի և ի քուն եղէ. զարթեայ և Տէր ընդունելի իմ է։

Ոչ երկեայց ես ի բիւրուց զօրաց նոցա, որք շուրջանակի պատեալ պաշարեալ պահէին զիս։

Արի Տէր և փրկեա զիս Աստուած իմ. զի դու հարեր զամենեսեան որք էին ընդ իս թշնամութեամբ ի տարապարտուց, և զատամունս մեղաւորաց փշրեցես։

Տեառնդ է փրկութիւն, ի վերայ ժողովրդեան քոյ օրհնութիւն քո։

Տէր Աստուած փրկութեան իմոյ, ի տուէ կարդացի և գիշերի առաջի քո։

Մտցեն աղօթք իմ առաջի քո Տէր, խոնարհեցո ունկն քո ի խնդրուածս իմ։

Զի լցաւ չարչարանօք անձն իմ, և կեանք իմ ի դժոխս մերձեցան, և համարեցայ ես ընդ այնոսիկ՝ որ իջանեն ի գուբ։

Եղէ ես որպէս մարդ առանց օգնականի, և ի մեռեալս ազատ։

Որպէս վիրաւորս որ ննջեն ի գերեզմանի։

Զորս դու ոչ յիշեցեր, նոքա ի ձեռանէ քումմէ մերժեցան։

Եդին զիս ի գբի ներքնումն, ի խաւարի և ի ստուերս մահու։

Յիս հաստատեցաւ սրտմտութիւն քո, զամենայն զբօսանս քո ածեր ի վերայ իմ։

Հեռի արարեր յինէն զծանօթս իմ, և եդին զիս նշաւակ իւրեանց։

Մատնեցայ և ոչ ելանէի. աչք իմ տկարացան յաղքատութենէ։

Աղաղակեցի առ Տէր զօրհանապազ, և համբարձի առ քեզ զձեռս իմ։

Միթէ մեռելո՞ց առնիցես զսքանչելիս քո, կամ բժիշկք յարուցանիցեն և խոստովան առնիցին առ քեզ։

Միթէ պատմեսցէ՞ քո երբեք ի գերեզմանի զողորմութիւնս քո, կամ զճշմարտութիւնս քո ի կորստեան։

Միթէ ճանաչիցե՞ն ի խաւարի սքանչելիք քո, կամ արդարութիւն քո յերկիր մոռացեալ։

Digitized by Google

Ես առ քեզ Տէր աղաղակեցի, առաւօտու աղօթք իմ ժամանեսցեն առ քեզ։

Ընդէ՞ր Տէր մերժես զանձն իմ, կամ դարձուցանես զերեսս քո յինէն։

Տնանկ և վաստակաւոր եմ ես ի մանկութենէ իմմէ, ի բարձրութենէ խոնարհեցայ և ափշեցայ։

Ցիս հաստատեցաւ բարկութիւն քո, արհաւիրք քո խռովեցուցին զիս։

Շրջեցան զինև որպէս ջուր, զօր ամենայն պաշարեցին զիս ի միասին։

Հեռի արարեր յինէն զբարեկամս իմ և զծանօթս իմ, վասն թշուառութեան իմոյ։

Օրհնեա անձն իմ զՏէր, և ամենայն ոսկերք իմ զանուն սուրբ նորա։

Օրհնեա անձն իմ զՏէր, և մի՛ մոռանար զամենայն տուրս նորա։

Ո քաւէ զմեղս քո, բժշկէ զամենայն հիւանդութիւնս քո։

Ո փրկէ յապականութենէ զկեանս քո, պսակէ զքեզ ողորմութեամբ և գթութեամբ։

Ո լնու ի բարութենէ զցանկութիւն քո, նորոգեսցի որպէս արծուոյ մանկութիւն քո։

Առնէ ողորմութիւնս Տէր, և իրաւունս ամենայն զրկելոց։

Եցոյց Տէր զճանապարհս իւր Մովսիսի, և որդւոցն Իսրայելի զկամս իւր։

Գթած ողորմած է Տէր, երկայնամիտ և բազումողորմ։

Ոչ ի սպառ բարկանայ մեզ Տէր, և ոչ յաւիտեան պահէ ոխս։

Ոչ ըստ մեղաց մերոց արար մեզ Տէր, և ոչ ըստ անօրէնութեան մերում հատոյց մեզ։

Այլ որպէս բարձր են երկինք յերկրէ, այնպէս զօրացոյց Տէր զողորմութիւն իւր ի վերայ երկիւղածաց իւրոց։

Որչափ հեռի են արևելք յարևմտից, այնչափ հեռի արար ի մէնջ զանօրէնութիւնս մեր։

Որպէս գթայ հայր ի վերայ որդւոց իւրոց, այնպէս գթացի Տէր յերկիւղածս իւր։

Զի նա գիտաց զստեղծուածս մեր, և յիշեաց թէ հող եմք։

Մարդոյ՝ որպէս խոտոյ են աւուրք իւր, որպէս ծաղիկ վայրի՝ այնպէս ծաղկէ։

Շնչէ ի նմա հողմ՝ և ոչ է, և ոչ ևս երևի տեղի նորա։

Բայց ողորմութիւն Տեառն յաւիտեանս յաւիտենից ի վերայ երկիւղածաց իւրոց, և արդարութիւն նորա յորդւոց մինչև յորդիս։

Ոյք պահեն զուխտս նորա, յիշեն զպատուիրանս նորա և առնեն զնա։

Տէր յերկինս պատրաստեաց զաթոռ իւր· արքայութիւն նորա ամենեցուն տիրէ։

Օրհնեցէք զՏէր ամենայն հրեշտակք նորա, հզօրք զօրութեամբ՝ ոյք առնէք զբան նորա ի լսել ձայնի պատգամաց նորա։

Օրհնեցէք զՏէր ամենայն զօրութիւնք նորա, պաշտօնեայք և արարողք կամաց նորա։

Օրհնեցէք զՏէր ամենայն գործք նորա, ընդ ամենայն տեղիս է տէրութիւն նորա· օրհնեա անձն իմ զՏէր։

Տէր լուր աղօթից իմոց, ունկն դիր խնդրուածաց իմոց ճշմարտութեամբ քով։

Լուր ինձ արդարութեամբ քով, և մի՛ մտաներ ի դատաստան ընդ ծառայի քում, զի ոչ արդարանայ առաջի քո ամենայն կենդանի։

Հալածեաց թշնամին զանձն իմ, խոնարհ արար յերկիր զկեանս իմ· և նստոյց զիս ի խաւարի որպէս մեռեալ յաւիտենից։

Զանձրացաւ յիս հոգի իմ, և սիրտ իմ խռովեցաւ յիս։

Յիշեցի զաւուրսն զառաջինս, խորհեցայ յամենայն գործս քո· յարարածս ձեռաց քոց խորհեցայ, և համբարձի առ քեզ զձեռս իմ։

Անձն իմ որպէս երկիր ծարաւի է առ քեզ· վաղվաղակի լուր ինձ Տէր, զի նուաղեաց յինէն հոգի իմ։

Մի՛ դարձուցաներ զերեսս քո յինէն, նմանիցեմ այնոցիկ որ իջանեն ի գուբ։

Լսելի արա ինձ առաւօտուց զողորմութիւնս քո, զի ես ի քեզ Տէր յուսացայ։

Ցոյց ինձ ճանապարհ յոր գնացից, զի առ քեզ Տէր համբարձի զանձն իմ։

Փրկեա զիս ի թշնամեաց իմոց Տէր, զի զքեզ ապաւէն ինձ արարի։

Ուսո ինձ առնել զկամս քո, զի դու ես Աստուած իմ։

Հոգի քո բարի առաջնորդեսցէ ինձ ի յերկիր ուղիղ։

Digitized by Google

Վասն անուան քո Տէր կեցուսցես զիս արդարու-թեամբ քով, հանցես ի նեղութենէ զանձն իմ։

Ողորմութեամբ քով սատակեսցես զթշնամիս իմ. և կո-րուսցես զամենայն նեղիչս անձին իմոյ, զի ես ծառայ քո եմ։

Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից ամէն։

Երգ տեառն Ներսէսի Հայոց Կաթողիկոսի։

Յիշեսցուք ի գիշերի զանուն քո Տէր։

Բղխեսցեն սիրտք մեր զբան բարի. և լեզուք մեր պատմեսցեն զգործս երկնաւոր Թագաւորին։

Ի մէջ գիշերի. յարուցեալ խոստովանեսցուք ըս զքեզ Տէր։

Զաղօթս մեր մատուսցուք քեզ Տէր. ի գաւթս քո ի մէջ Նոր Երուսաղեմի։

Ի գիշերի մինչեւ արի. համբարձցուք զձեռս մեր սրբութեամբ առ քեզ Տէր։

Ի ձայն [illegible]յն գոհութեան. ամենայն հո-գիք օրհնեսցեն զՏէր։

Փ. Զարթիք փառք իմ զարթիք և ես զար-թեայց առաւօտուց ալէլուիա։

Զարթիք ընդ զուարթունս մանկունք վերինն Սիոնի ալէլուիա։

Digitized by Google

ՔԱՐՈԶ

Զարթուցեալքս ամենեքեան ի հանգստենէ քնոյ. զոր շնորհեաց մեզ մարդասէրն Աստուած ի մխիթարութիւն եւ ի սփոփանս տկարութեան մերում։ Եւ եկեալքս միաբան հոգեւոր երգով ի փառաբանութիւն եւ ի պատիւ ամենասուրբ անուան Տեառն մերոյ և փրկչին Յիսուսի Քրիստոսի։ Ահիւ եւ դողութեամբ կացցուք յաղօթս առաջի Նորա։ Եւ գոհացարուք ընդմանէ ի գիշերային ժամուս յայսմիկ. վասն իրաւանց և արդարութեան Նորա։ Որ ընտրեաց ըզմեզ ողորմութեամբն իւրով. եւ շնորհեաց մեզ բերել ընդունելութիւն երկնային հրեշտակացն ի փառաբանիչըս Տեառն Աստուծոյ ամենեցուն և մեզ լինել։ Եւ մեք այսուհետեւ սրբելով զանձինըս մեր ի խըղճէ և ի չար գործոց։ Համբարձցուք ըզձեռըս մեր ի սրբութիւն առանց բարկութեան և երկմըտութեան։ Հաւատով խնդրեսցուք ի Նմանէ զքաւութիւն և զթողութիւն յանցանաց մերոց։ Խոստովան լինելով ըզգաղտնիս սըրտից մերոց ծածկագիտին Աստուծոյ։ Որպէս զի ընդունելով ըզպաղատանըս մեր աղօթիւք և բարեխօսութեամբ ամենայն սրբոց։ Շնորհեսցէ մեզ մարդասէրն Աստուած կեալ առաքինութեամբ և անարատ վարուք ըստ կամաց Նորա յայսմ աշխարհի։ Եւ արժանաւոր լինելով յաւիտենական և երկնային խորանացն։ Զոր խոստացաւ սիրելեաց իւրոց ճըշմարիտն Աստուած Յիսուս Քրիստոս. Տէր մեր կեցո և ողորմեա։ — Կեցո Տէր։

Զմընացուած գիշերիս խաղաղութեամբ անցուցանել հաւատով ի Տեառնէ խնդրեսցուք։ — Շնորհեա Տէր։

Զհրեշտակ խաղաղութեան պահապան անձանց մերոց. ի Տեառնէ խնդ։

Digitized by Google

Զքաւութիւն և զթողութիւն յանցանաց մերոց. ի Տեառնէ խնդ։

Զսրբոյ խաչին մեծ և կարող զօրութիւն յօգնութիւն անձանց մերոց. ի Տեառնէ խնդ։

Եւ եւս միաբան վասն ճշմարիտ և սուրբ հաւատոյ մերոյ ըզՏէր աղաչեսցուք։ — Տէր ողորմեա։

Զանձինս մեր և զմիմեանս Տեառն Աստուծոյ ամենակալին յանձն արասցուք։ — Քեզ Տեառնդ յանձն եղիցուք։

Ողորմեաց մեզ Տէր Աստուած մեր ըստ մեծի ողորմութեան քում. ասասցուք ամենեքեան միաբանութեամբ։

Տէր ողորմեա. Տէր ողորմեա. Տէր ողորմեա։

Եւ ասէ Տէր ողորմեա ըստ պատշաճի աւուրն։ Ի կիւրակէս և ի տօնս տէրունականս երեք Տէր ողորմեա. իսկ ի տօնս սրբոց՝ յիսուն, և յաւուրս պահոց՝ հարիւր։

Նորին Տեառն Ներսէսի

Հայոց կաթողիկոսի երգ աղօթական ի դէմս սրբոյ Երրորդութեան, և իւրաքանչիւրոյ դիմի Երրորդութեանն առանձնակի։

Առաւօտ լուսոյ,
Արեգակն արդար,
Առ իս լոյս ծագեա։
Բըղխումն ի Հօրէ,
Բըղխեա ի հոգւոյս
Բան քեզ ի հաճոյս։
Գանձդ ողորմութեան,
Գանձիդ ծածկելոյ
Գտող զիս արա։
Դուռն ողորմութեան
Դասանողիս բաց,
Դասեցո վերնոց։
Երրեակ միութիւն,
Եղելոց խնամող,
Եւ ինձ ողորմեա։

Զարթիր Տէր յօգնել.
Զարթո ըզթըմբրեալս,
Զուարթնոց նըմանել։
Էդ Հայր անըսկիզբն,
Էակից Որդի,
Է միշտ սուրբ Հոգի։
Ընկալ զիս զըթած,
Ընկալ ողորմած,
Ընկալ մարդասէր։
Թագաւոր փառաց,
Թողութեանց տըւող,
Թող ինձ ըզյանցանս։
Ժողովող բարեաց,
Ժողովեա և զիս
Ժողովս անդրանկաց։

* Տես ի Զեկուցումն, էջ է։

Digitized by Google

Ի քէն Տէր հայցեմ
ի մարդասիրէդ
ինձ բըժըշկութիւն։
Լեր կեանք մեռելոյս,
Լոյս խաւարելոյս,
Լուծանող ցաւոյս։
Խորհըրդոց գիտող,
Խաւարիս շնորհեա
Խորհուրդ լուսաւոր։
Ծընունդ Հօր ծոցոյ,
Ծածկելոյս ստուերաւ
Ծագեա լոյս փառաց։
Կենարար Փըրկիչ,
կեցո ըզմեռեալս,
կանգնեա ըզգլորեալս։
Հաստեա հաւատով,
Հաստատեա յուսով,
Հիմնեցո սիրով։
Ձայնիւս աղաչեմ,
Ձեռօքս պաղատիմ,
Ձիր բարեաց շնորհեա։
Ղամբարմամբ լուսոյ,
Ղեկավար ճարտար,
Ղօղեալս ամրացո։
Ճառագայթ փառաց,
Ճանապարհ ինձ ցոյց
Ճեմել ի յերկինս։
Միածինըդ Հօր,
Մոյծ զիս յառագաստ
Մաքուր հարսանեացդ։
Յորժամ գաս փառօք
Յահագին աւուրն,
Յիշեա զիս Քրիստոս։
Նորոգող հնութեանց,
Նորոգեա և զիս,
Նորոգ զարդարեա։
Շնորհատու բարեաց,
Շնորհեա զքաւութիւն,
Շնորհեա զթողութիւն։

Ուրախացո Տէր
Ոգւոյս փըրկութեամբ,
Ոյր վասն եմ ի սուգ։
Չար մըշակողին
Չար սերմանցն որ յիս՝
Չորացո զպըտուղ։
Պարգևիչ բարեաց,
Պարգևեա իմոց
Պարտեաց թողութիւն։
Ջուր շնորհեա աչացս,
Ջերմ հեղուլ արտօսր,
Ջընջել ըզյանցանս։
Ռետինըդ քաղցու,
Ռամ հոգւոյս արբօ,
Ռահ ցոյց ինձ լուսոյ։
Սէր անուն Յիսուս,
Սիրով քո ճըմլեա
Սիրտ իմ քարեղէն։
Վասըն գըթութեան,
վասն ողորմութեան,
վերըստին կեցո։
Տենչալի տեսլեամբ
Տուր ինձ յագենալ,
Տէր Յիսուս Քրիստոս։
Րաբունի երկնաւոր,
Րոտեա զաշակերտս
Րամից երկնայնոց։
Ցօղ արեան քոյ Տէր
Ցօղեա ի հոգիս,
Ցընծացէ անձն իմ,
Իւծեալըս մեղօք
Իւծեալ աղաչեմ,
Իւսեա յիս բարիս։
Փըրկիչ բոլորից,
փութա զիս փըրկել
փորձութեանց մեղաց։
Քաւիչ յանցանաց,
Քաւեա զօրհնաբանս
Քեզ երգել ըզփառս։

Digitized by Google

Աստուածածնին բարեխօսութեամբն
Ցիշեա Տէր և ողորմեա ։

Նորին Տեառն Ներսէսի
Հայոց կաթողիկոսի ողբերգութիւն անձին զղջացելոյ, և բովանդակ
եռատառանշանեալ ըստ [illegible] ։

Աշխարհ ամենայն,
Առ քո նայեցեալ
Աստակից լերուք ։
Բանիւ ըմբըրթունս,
Բարբառեմ լեզուաւս,
Բողոքեմ զանձնէ ․
Տէր ողորմեա ․
Տէր ողորմեա ․
Տէր ողորմեա ։
Գող եղէ մեղաց,
Գլուխ կորըստեան,
Գուբ ինձ փորեցի ։
Դաւեցի զանձն իմ,
Դաւաճանեցի,
Դարան գործեցի ․ Տէր ող ։
Երբեմն էի լոյս,
Եւ այժմ եմ խաւար
Եւ ըստուեր մահու ։
Զխորդ պատմեցից
Զթիւ մեղաց իմոց,
Զի բազում են յոյժ ․ Տէր ող ։
Էրկինք և երկիր,
Էկայք ողբացէք
Էղկելի զանձն իմ ։
Ընտրեցի ըղչարն,
Ընկալայ կամաւ
Ըզհոյլըս մեղաց ․ Տէր ող ։
Թաթաւիմ տըղմով,
Թաւալիմ ի մեղս,
Թօթափել չկարեմ ։
Ժանտ ախտիւ լըցեալ՝
Ժահահոտ եղէ
Ժամանակ բազում․ Տէր ող ։
Ի բաց մեկնեցայ
Ի սուրբ խորհըրդոց,
Ի բարեաց գործոց ։
Լաւ վարկաւ անձն իմ
Լուսոյն հեռանալ,
Լինել ընդ խաւար ․ Տէր ող ։
Խորհուրդըք չարին
Խաբեն ըզհոգիս,
Խորասոյզ առնեն ։
Ծածկեն անդընդաք,
Ծիծաղին զկորմամբս,
Ծանակ զիս առնեն ․ Տէր ող ։
Կամաւ կորացայ
Կարկամեալս անձամբ,
Կանգնել ոչ կարեմ ։
Հուր մեղաց կիզող
Հըրդեհեաց որ յիս
Հոգւոր բարիս ․ Տէր ող ։
Ձաղկեցայ մեղօք ․
Ձաղեցին տեսօղք ․
Ձանձրացաւ հոգիս ։
Ղեղի դառնութեան
Ղօղեալ ի սըրտիս,
Ղամբար իմ շիջաւ ․ Տէր ող ։
Ճաշակմամբ մեղաց
Ճաշեցի ըզմահ,
Ճոխս աղքատացայ ։
Մեռեալ եմ հոգւով,
Մոլորեալ մըտօք,
Միայն կամ մարմնով ․ Տէր ։
Յորոգայթ մահու
Յորսողին անկայ,
Յաղթեցայ յախտից ։

Նետից թշնամւոյն
Նըշաւակ եղէ,
Նոր միշտ խոցոտիմ. Տէր ող։
Շուրջ պատեալ զինև
Շունք բազում եղեն,
Շաղախին արեամբս։
Որս եղէ չարին,
Ուռկանաւ մեղաց
Որսացաւ զանձն իմ. Տէր ող։
Չարաչար վըշտօք
Չարչարի անձն իմ.
Չունիմ դադարումն։
Պարտապան գըտայ
Պարտուց յանցանաց
Պարտեալս ի մեղաց. Տէր ող։
Ջանամ զըղջանալ,
Ջերանիմ դարձեալ,
Ջեռնում հրով մեղաց։
Ռաբբի կոչեցայ,
Ռակայ անուանիմ
Ռամկական վարուք. Տէր։
Սիրով ցանկութեամբ,
Սաստիկ բարկութեամբ,
Սիրտ իմ խոցեալ է։
Վիրօք յանցանաց
Վըշտանայ հոգիս.
Վարանեալ շըրջիմ. Տէր ող։
Տիրեցին ինձ չարք,
Տարագիր հանին
Տիրական գըրկացն։
Րաբունւոյն բարւոյ
Րախճական ձայնին
Րօտինս ոչ լըւայ. Տէր ող։
Ցանկութիւն չարեաց
Ցանկալի դիմօք
Ցաւեցոյց զաչս իմ։
Իւրաքանչիւրոց
Իւսմամբ խուռն ախտից
Իւծեալ է հոգիս. Տէր ող։
Փութացիր անձն իմ
Փախչել ի չարեաց,
Փափաքել բարեաց։
Քեզ միշտ մերձ ծանիր
Քուն մահու եկեալ,
Քըննող դատաւոր.
Տէր ողորմեա.
Տէր ողորմեա.
Տէր ողորմեա։

Աստուածածնին բարեխօսութեամբն
Յիշեա Տէր և ողորմեա։

## Ջնէ —ւ ԱՂՕԹՔՍ

Զքէն գոհանամք Տէր Աստուած մեր, որ շնորհեցեր մեզ հանգիստ քնոյ խաղաղութեամբ, և զարթուցեալ ժամանեցուցեր զմեզ կանխել յերկրպագութիւն ահաւոր և փառաւորեալ անուանդ քում սրբոյ։ Տուր մեզ Տէր, աղաչեմք զքեզ, զմնացուած գիշերիս խաղաղութեամբ անցուցանել. և զամենայն ժամանակս կենաց պանդխտութեան մերոյ երկիւղիւդ քո ամրացո և պահեա։ Որպէս զի ըզգուշութեամբ և անարատ վարուք կրօնաւորեալք յայսմ աշխարհիս՝ ժամանեսցուք յանքոյթ և ի խաղաղ նաւահանգիստ յաւիտենական ի կեանսդ, շնորհօք և մարդասիրութեամբ Տեառնդ մերոյ և փրկչիդ Յիսուսի Քրիստոսի.

Digitized by Google

ընդ որում քեզ Հօր և Հոգւոյդ սրբոյ վայելէ փառք իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

Խաղաղութիւն ամենեցուն. Աստուծոյ երկրպագեսցուք:

Նայեա Տէր բարերար ողորմութեամբդ քո յերկրպագուս և ի փառաբանիչս անուանդ քում սրբոյ: Տէր զօրութեանց, խաղաղացո զանձինս մեր յամենայն սատանայական խռովութեանց և յաշխարհական զբօսանաց: Ջհրեշտակ խաղաղութեան քոյ առաքեա առ մեզ, որ եկեալ պահեսցէ զմեզ անխռովս ի տուէ և ի գիշերի՝ յարթնութեան և ի հանգստեան մերում: Որպէս զի բարեպաշտութեամբ և արժանաւորապէս քեզ Տեառնդ ծառայելով ի կեանս յայսոսիկ, ժամանեսցուք յաւիտենական երկնից արքայութեան քոյ, զոր պատրաստեցեր ի սկզբանէ աշխարհի սրբոց քոց: Եւ ընդ նոսին զոհանալով փառաւորել զՀայր և զՈրդի և զսուրբ Հոգիդ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

Օրհնեալ Տէր մեր և փրկիչն Յիսուս Քրիստոս. ամէն:

Առ այս ասացեալ ըստ յօրինին, և զկնի ասացելոյն այս ըստ յօրինին կանոնագլուխ:

---

## ԿԱՆՈՆԱԳԼՈՒԽ ԿԱՐԳԱՒ

## ԱՁ

Դա՛տեա՛ Տէր զայնոսիկ. ո՛յք դա՛տի՛ն զի՛ս. ա՛լէ-լո՛ւիա՛. մա՛րտի՛ր ընդ այ՛նոսիկ. ո՛ր մարտընչի՛ն ը՛նդ ի՛ս ա՛լէ-լո՛ւիա՛:

Առ զզէն և զասպար քո, և արի յօգնել ինձ. հան զսուր քո ընդդէմ հալածչաց իմոց, արգել զնոսա. և ասա դու ցանձն իմ՝ թէ փրկութիւն քո ես եմ. ալէլուիա:

Ամաչեսցեն և յամօթ լիցին ոյք խնդրեն զանձն իմ. դարձցին յետս և ամաչեսցեն ոյք խորհէին ինձ չար:

Եղիցին նոքա որպէս փոշի առաջի հողմոյ. և հրեշտակ Տեառն նեղեսցէ զնոսա:

Եղիցին ճանապարհք նոցա ի խաւար և ի գայթակղութիւն, և հրեշտակ Աստուծոյ հալածեսցէ զնոսա:

Digitized by Google

Ի Նանիր թագուցին ինձ որոգայթ յապականութեան իւրեանց, և ի Նանիր Նախատեցին զանձն իմ ։

Փ. Տէր յերկինս է ողորմութիւն քո . ճըշմարտութիւն քո մինչև յամպս. ալէլուիա ալէլուիա ։

Արդարութիւն քո որպէս լերինք Աստուած, իրաւունք քո որպէս խորք բազումք, զմարդիկ և զանասուն կեցուցանես դու Տէր ։

Որպէս զի բազում արարեր զողորմութիւն քո Աստուած. այլ որդիք մարդկան ի հովանի թևոց քոց յուսասցին ։

Արբեսցին Նոքա ի պարարտութենէ տան քոյ, և զուղխըս փափկութեան քո տացես ըմպել Նոցա ։

Ի քէն է Տէր աղբիւր կենաց, և լուսով երեսաց քոց տեսանեմք զլոյս ։

Ծագեա զողորմութիւնս քո որք ճանաչեն զքեզ, զարդարութիւնս քո որք ուղիղ են սրտիւք ։

Մի եկեսցեն ի վերայ մեր ոտք ամբարտաւանից, և ձեռք մեղաւորաց մի դողացուսցեն զմեզ ։

Անդ անկցին ամենեքեան որք գործեն զանօրէնութիւն, մերժեսցին և այլ մի կարասցեն հաստատիլ ։

Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն ։ Ալէլուիա. ալէլուիա ։

## ԱԿ

Ասաց անըզգամն ի սըրտի իւրում թէ ոչ գոյ Աստըւածծ. ալէլուիա. ապականեցան և պըղծեցան յանօրէնութեան իւրեանց. և ոչ ոք է որ առնէ ըզքաղցրութիւն. ալէլուիա ։

Աստուած յերկնից Նայեցաւ յամենայն որդիս մարդկան, տեսանել թէ իցէ ոք իմաստուն, որ խնդրիցէ զԱստուած. ալէլուիա

Ամենեքեան խոտորեցան ի միասին և անպիտանացան ։

Ոչ ոք է որ առնէ զբարի, և չէ ոք մինչև ի մի ։

Որպէս ոչ ծանիցեն ամենեքեան, որք գործեն զանօրէնութիւն ։

Որք ուտեն զժողովուրդ իմ որպէս կերակուր հացի. և առ Աստուած ոչ կարդացին ։

Փ. Զի՛ ո՜չ գոյր նոցա փոխա՛նա՜կ. և ոչ երկեա՛ն յԱ՛ստո՜ւծոյ. ա՛լէ՛լուիա՛ ա՛լէ՛լուիա՜։

Զգեաց զձեռն իւր ի հատուցանել նոցա, և նոքա պղծեցին զօրէնս նորա։

Բաժանեցան ի սրտմտութենէ երեսաց նորա, և եհաս ի սիրտս նոցա։

Կակուղ էին բանք նոցա քան զձէթ, և ինքեանք որպէս սլաք։

Ընկեա ի Տէր զհոգս քո, և նա կերակրէ զքեզ. և ոչ տայ յաւիտեան սասանութիւն արդարոյ։

Դու Աստուած իջուցես զնոսա ի գուբ ապականութեան, արք արիւնահեղք և նենգաւորք մի հասարակեսցեն զաւուրս իւրեանց. այլ ես ի քեզ Տէր յուսացայ։

Փառք Հօր և Որդւոյ։

## ԲԶ

Ի՛ քե՛զ Տէր յուսացայ. մի ամաչեցից յաւիտեա՜ն. ա՛լէ՛լուիա՜. յարդարութեա՛ն քում փրկեա և ապրեցո՛ զի՛ս. ա՛լէ՛լուիա՜։

Խոնարհեցո առ իս զունկն քո և կեցո զիս։

Լեր ինձ Աստուած ապաւէն, և տեղի ամուր կեցուցանել զիս. զի հաստատութիւն իմ և ապաւէն իմ դու ես։

Աստուած իմ փրկեա զիս ի ձեռաց մեղաւորի, ի ձեռաց անօրինի և անիրաւի։

Դու ես համբերութիւն իմ Տէր, Տէր յոյս իմ ի մանկութենէ իմմէ։

Ի քեզ հաստատեցայ ես յարգանդէ, յորովայնէ մօր իմոյ դու ես ապաւէն իմ, և առ ի քէն է օգնութիւն իմ յամենայն ժամ։

Փ. Ե՛րկիր պագցեն նմա ամենայն թագաւորք երկրի. և ամենայն ազգք ծառայեսցե՛ն նմա՛. ա՛լէ՛լու՛իա՛. ա՛լէ՛լուիա՛։

Զի փրկեաց զաղքատն ի ձեռաց հզօրի, զաղքատն և զտնանկն որոյ ոչ է օգնական։

Անխայեսցէ նա յաղքատն և ի տնանկն, և զանձինս



Digitized by Google

տնանկաց կեցուսցէ, ի վաշխից չարաց փրկեսցէ զան- ձինս նոցա ։

Պատուական է անուն նորա առաջի նոցա, կեցցէ և տացի նմա յոսկւոյն արաբացւոց ։

Յաղօթս կացցեն առ նա յամենայն ժամ, և զօրհա- նապազ օրհնեսցեն զնա ։

Եղիցի հաստատութիւն ընդ ամենայն երկիր, և ի վե- րայ գլխոց լերանց ։

Բարձրասցի քան զԼիբանան պտուղ նորա, ծաղկեսցի ի քաղաքի Տեառն որպէս խոտ երկրի ։

Եղիցի անուն Տեառն օրհնեալ յաւիտեան, զի յառաջ քան զարև է անուն նորա ։

Ի նա օրհնեսցին ամենայն ազգք երկրի. և ամենայն ազինք երանիցեն նմա ։

Օրհնեալ Տէր Աստուած Իսրայէլի՝ որ առնէ սքանչե- լիս միայն. և օրհնեալ է անուն սուրբ փառաց նորա յա- ւիտեան. լցցի փառօք նորա ամենայն երկիր, եղիցի, եղիցի ։

Փառք Հօր և Որդւոյ ։

## ԲԿ

Զողորմութիւնս քո Տէր յաւիտեան օրհնեսցից. ա- լէ: լուիա. ազգէ յազգ պատմեսցից զճշմարտութիւնս քո բերանով իմով. ալէ: լուիա ։

Ասացեր՝ թէ աշխարհս ողորմութեամբ շինեսցի, յեր- կինս պատրաստ եղիցի ճշմարտութիւն քո ։

Եդի ուխտ ընտրելոց իմոց, երդուայ Դաւթի ծառայի իմոյ ։

Յաւիտեան հաստատեցից զզաւակ քո, և շինեցից ազ- գէ յազգ զաթոռ քո ։

Խոստովան եղիցին երկինք սքանչելեաց քոց Տէր, և ճշմարտութիւն քո յեկեղեցիս սրբոց ։

Ո՞վ է յամպս՝ որ հաւասարէ քեզ, կամ ո՞վ նմանիցէ Տեառն յորդիս Աստուծոյ ։

Փ. Դարձուցեր զօգնութիւն ի սրոյ նորա, և ոչ ընկա- լար զնա ի պատերազմի. ալէլուիա. ալէ: լուիա ։

Digitized by Google

Անարգեցեր զսրբութիւն նորա, և զաթոռ նորա յեր֊կիր կործանեցեր ։
Նուազ արարեր զաւուրս ժամանակաց նորա, և հեղեր զնովաւ զամօթ ։
Մինչև յե՞րբ դարձուցանես զերեսս քո ի սպառ, բոր֊բոքեսցի՞ որպէս հուր բարկութիւն քո ։
Իսկ արդ յիշեա և տես թէ ո՛վ է իմ հանգիստ. միթէ ի զո՞ւր ինչ ստեղծեր զամենայն որդիս մարդկան ։
Ո՞վ է մարդ՝ որ կեցցէ և ոչ տեսցէ զմահ, կամ փըր֊կեսցէ զանձն իւր ի ձեռաց դժոխոց ։
Ո՞ւր են ողորմութիւնք քո Տէր առաջինք, զոր երդուար Դաւթի ճշմարտութեամբ քով ։
Յիշեա զնախատինս ծառայի քոյ, զոր ընկալայ ի ծոց իմ յազգաց բազմաց ։
Զոր նախատեցին թշնամիք քո Տէր, նախատեցին փո֊խանակ օծելոյ քոյ ։
Օրհնեալ Տէր Աստուած յաւիտեանս յաւիտենից. եղի֊ցի, եղիցի ։

Փառք Հօր և Որդւոյ ։

## ԳՁ

Խոստովան եղերուք Տեառն զի քաղցր է. ալէ֊լուիա. զի յաւիտեան է ողորմութիւն նորա. ալ֊լէլուիա ։

Ո՛ խօսեսցի զզօրութիւնս Տեառն, լսելի արասցէ զա֊մենայն օրհնութիւնս նորա ։
Երանի՛ ոյք պահեն զիրաւունս և առնեն զարդարու֊թիւն յամենայն ժամ ։
Յիշեա զմեզ Տէր ընդ հաճոյս ժողովրդեան քոյ, այց արա մեզ ի փրկութեան քում ։
Տեսցուք մեք զքաղցրութիւն ընտրելոց քոց. ուրախ ե֊ղիցուք մեք յուրախութիւն ազգի քոյ, և գովեսցուք մեք ի ժառանգութեան քում ։
Մեղաք մեք ընդ հարս մեր, անօրինեցաք և յանցեաք ։
Փ. Մո՛ռանեաց զնոսա ի ձեռս հեթանոսաց, տիրեցին նոցա ատելիք իւրեանց, և թշնամիք իւրեանց նեղեցին

զնոսա. եւ խոնարհ եղեն ի ներքոյ ձեռաց նոցա. ալէ-լուիա. ալէլուիա:

Բազում անգամ փրկեաց զնոսա, եւ նոքա դառնացուցին զնա ի խորհուրդս իւրեանց, եւ կորացան յանօրէնութեան իւրեանց:

Հայեցաւ Տէր ի նեղութիւնս նոցա, ի լսել ձայնի աղօթից նոցա:

Յիշեաց զուխտ իւր եւ զղջացաւ ըստ բազում ողորմութեան իւրում. ետ զնոսա ի գթութիւնս առաջի ամենայն գերչաց նոցա:

Փրկեա զմեզ Տէր Աստուած մեր, եւ ժողովեա զմեզ ի հեթանոսաց:

Խոստովան եղիցուք անուան քում սրբոյ, եւ պարծեսցուք յօրհնութիւնս քո:

Օրհնեալ Տէր Աստուած Իսրայէլի, յաւիտենիս յաւիտենից:

Եւ ասասցէ ամենայն ժողովուրդն. եղիցի, եղիցի:

Փառք Հօր եւ Որդւոյ:

## ԳԿ

Արարի իրաւունս եւ արդարութիւն. ալէլուիա. մի մատներ զիս ի ձեռս նեղչաց իմոց ալէլուիա:

Ընկալ զծառայս քո ի բարի. զի մի ամբարտաւանք զզուեսցեն զիս:

Սպասեցին աչք իմ փրկութեան քում Տէր, եւ բանից արդարութեան քո:

Արա ընդ ծառայի քում Տէր ըստ ողորմութեան քում, զարդարութիւնս քո ուսո ինձ:

Ծառայ քո եմ ես, իմաստուն արա զիս, եւ ծանեայց զվկայութիւնս քո:

Ժամ է պաշտել զՏէր, խափանեցին զօրէնս քո:

Փ. Մերձեսցին խնդրուածք իմ առաջի քո Տէր. ըստ բանի քում իմաստուն արա զիս. ալէլուիա. ալէլուիա:

Մտցեն աղօթք իմ առաջի քոյ Տէր, եւ բանիւ քով փրկեա զիս:

Digitized by Google

Բղխեսցեն շրթունք իմ զօրհնութիւնս քո, յորժամ ուսուցես ինձ զարդարութիւնս քո ։

Խօսեսցի լեզու իմ զբանս քո, զի ամենայն պատուիրանք քո արդարութեամբ են ։

Եղիցի ձեռն քո ի կեցուցանել զիս, զի զպատուիրանս քո ընտրեցի ։

Ցանկացայ փրկութեան քում Տէր, և օրէնք քո խօսք իմ էին ։

Կեցցէ անձն իմ, օրհնեսցէ զքեզ, և իրաւունք քո օգնեսցեն ինձ ։

Մոլորեցայ ես որպէս զոչխար կորուսեալ, խնդրեա զծառայս քո, զի զպատուիրանս քո ես ոչ մոռացայ ։

Փառք Հօր և Որդւոյ ։

## ԴՁ

Օրհնեա անձն իմ ըզՏէր . օրհնեցէք ըզՏէր ի կեանս իմ ալէլուիա . սաղմոս ասացից Աստուծոյ իմոյ մինչև եմ ես ալէլուիա ։

Մի յուսայք յիշխանս՝ յորդիս մարդկան . զի ոչ գոյ փրկութիւն ի նոսա ։

Ելցէ հոգի ի նոցանէ, և դարձցին անդրէն ի հող, և յայնմ աւուր կորիցեն ամենայն խորհուրդք նոցա ։

Երանի՛ ազգի, որոյ Տէր Աստուած Յակովբայ օգնական է նմա, և յոյս նորա ի Տէր Աստուած է ։

Որ արար զերկինս և զերկիր, զծով և զամենայն որ է ի նոսա ։

Ո պահէ զճշմարտութիւն յաւիտեան, և առնէ իրաւունս զրկելոց ։

Փ. Գովեա Երուսաղէմ ըզՏէր . ալէլուիա ։

Եւ օրհնեա զԱստուած քո Սիոն . ալէլուիա ։

Զի զօրացոյց զնիգս դրանց քոց, և օրհնեաց զորդիս քո ի քեզ ։

Ո եդ զսահմանս քո ի խաղաղութիւն, պարարտութեամբ ցորենոյ լցոյց զքեզ ։

Առաքէ զբան իւր յերկիր, վաղվաղ ընթանան պատգամք նորա ։

Դնէ զձիւն որպէս զասր, և զմէգ որպէս փոշի ցանեաց։
Արկանէ զսառն որպէս պատառս, առաջի ցրտոյ Նորա ո՞ կարէ կալ։
Առաքէ զբան իւր և հալէ զնոսա, շնչեսցեն հողմք և գնասցեն ջուրք։
Պատմէ զբան իւր Յակովբայ, զարդարութիւն և զիրաւունս Իսրայելի։
Ոչ այսպէս արար ամենայն ազգաց Տէր, և զդատաստանս իւր ոչ յայտնեաց Նոցա։

Փառք Հօր և Որդւոյ։

## ԴԿ

Սիրեցից ըզքեզ Տէր զօրութիւն իմ. ալէլուիա. Տէր հաստատիչ իմ, ապաւէն իմ եւ փրկիչ իմ. ալէլուիա։

Աստուած օգնական իմ և ես յուսամ ի Նա, ապաւէն իմ եղջիւր փրկութեան իմոյ ընդունելի իմ է։
Օրհնելով կարդացի առ Տէր, և ի թշնամեաց իմոց ապրեցայց։
Շուրջ եղեն զինև երկունք մահու, և ուղխք անօրէնութեան խռովեցուցին զիս։
Վիշտք դժոխոց պաշարեցին զիս, ժամանեցին ինձ որոգայթք մահու։
Ի նեղութեան իմում ես առ Տէր կարդացի, և առ Աստուած իմ աղաղակեցի։

Փ. Զգեցուցեր ինձ զօրութիւն ի պատերազմի, և զյարուցեալսն ի վերայ իմ ներքոյ իմ արարեր. ալէլուիա. ալէլուիա։

Զթշնամիս իմ հալածականս արարեր, և զատելիս իմ սատակեցեր։
Աղաղակեցին, և ոչ ոք էր որ փրկէր զնոսա. կարդացին առ Տէր, և ոչ լուաւ Նոցա։
Մանրեցից զնոսա որպէս փոշի առաջի հողմոյ, որպէս կաւ զհեհաց կոխեցից զնոսա։
Փրկեսցէ զիս Տէր ի հակառակութենէ ժողովրդոց, և կացուսցէ զիս գլուխ հեթանոսաց։

Digitized by Google

ժողովուրդ զոր ոչ գիտէի ծառայեաց ինձ, և ի լուր ականջաց լուաւ ինձ ։

Որդիք օտարաց ստեցին ինձ, որդիք օտարաց մաշե֊ ցան և կաղացան ի շաւղաց իւրեանց ։

Կենդանի է Տէր և օրհնեալ է Աստուած, և բարձր եղիցի Աստուած փրկութեան իմոյ ։

Աստուած է որ խնդրէ զվրէժ իմ, և հնազանդ առնէ զժողովուրդս ընդ ինև ։

Փրկիչ իմ ի թշնամեաց իմոց բարկացողաց, յայնցանէ որ յարուցեալ են ի վերայ իմ բարձր արարեր զիս, և յառնէ անիրաւէ փրկեցեր զիս ։

Վասն այսորիկ խոստովան եղէց քեզ ի հեթանոսս, և անուան քում սաղմոս ասացից ։

Մեծ արարեր զփրկութիւն թագաւորի նորա, առնել ողորմութիւն ընդ օծելոյ նորա ընդ Դաւթի և ընդ զա֊ ւակի նորա ազգէ մինչև յազգ ։

Փառք Հօր և Որդւոյ ։

Կանոնագլուխ Բուն Բարեկենդանին և Նոր Կիրակէին. Օրհնեա անձն իմ. է Ը-ն տուն, և տունն յաւելն երկու տան հետ յոյնէ֊ վերէն ։

ՍԱՂՄՈՍ. ՃԲ

Օրհնեա անձն իմ զՏէր. օրհնեցից զՏէր ի կեանս իմ, սաղմոս ասացից Աստուծոյ իմոյ մինչև եմ ես ։

Մի՛ յուսայք յիշխանս՝ յորդիս մարդկան, զի ոչ գոյ փրկութիւն ի նոսա ։

Ելցէ հոգի ի նոցանէ՝ և դարձցին անդրէն ի հող. և յայնմ աւուր կորիցեն ամենայն խորհուրդք նոցա ։

Երանի՛ ազգի որոյ Տէր Աստուած Յակոբայ օգնական է նմա, և յոյս նորա ի Տէր Աստուած է ։

Որ արար զերկինս և զերկիր, զծով և զամենայն որ է ի նոսա ։

Ո պահէ զճշմարտութիւն յաւիտեան, և առնէ իրա֊ ւունս զրկելոց ։

Տայ հաց քաղցելոց, և արձակէ զկապեալս Տէր ։

Տէր բանայ զաչս կուրաց, և կանգնէ զգլորեալս Տէր ։

Տէր սիրէ զարդարս, Տէր պահէ զպանդուխտս. զորբս և զայրիս ընդունի Տէր, և զճանապարհս ամպարշտաց կորուսանէ ։

•

Թագաւորեսցէ Տէր յաւիտեան, Աստուած քո Սիոն, ազգէ մինչև յազգ։

ՓՈԽ

Օրհնեցից ընդ քեզ գոհութեամբ ի կեանս իմ. սաղմոս ասացից քեզ Քրիստոս Թագաւոր յաղթական, նոր երգով օրհնութեամբ։

ՍԱՂՄՈՍ. ՃԽԶ

Օրհնեցէք զՏէր՝ զի բարի են սաղմոսք. Աստուծոյ մերում քաղցր եղիցի օրհնութիւն։

Շինէ զԵրուսաղէմ Տէր, և զցրուեալսն Իսրայելի ժողովէ։

Բժշկէ զբեկեալ սիրտս, և պատէ զամենայն վէրս նոցա։

Ո թուէ զբազմութիւն աստեղաց, և զամենեսեան զնոսա յանուանէ կոչէ։

Մեծ է Տէր մեր և մեծ է զօրութիւն նորա, իմաստութեան նորա ոչ գոյ բաւ։

Ընդունի զհեզս Տէր, և խոնարհ առնէ զամբարտաւանս մինչև յերկիր։

Օրհնեցէք զՏէր խոստովանութեամբ, սաղմոս ասացէք նմա օրհնութեամբ։

Զգեցոյց զերկինս ամպովք, պատրաստ արար զանձրև իւր յերկիր։

Բուսոյց զխոտ ի լերինս, զդալար ի ծառայութիւն մարդկան։

Ո տայ անասնոց կերակուր, ձագուց ագռաւուց՝ որք կարդան առ նա։

Ոչ թէ ընդ զօրութիւնս ձիոյ կամեցաւ Տէր, և ոչ ընդ երանս առն սկայի հաճեցաւ։

Այլ հաճեցաւ Տէր ընդ երկիւղածս իւր, և ընդ այնոսիկ որք յուսան յողորմութիւն նորա։

ՓՈԽ

Քաղցրացուցին քեզ Քրիստոս. գոհութիւնք երկիւղածաց անուան քո. զոր յուսացուցեր ողորմութեամբ քո ի խորհուրդըս կենարարի գալըստեանըդ քո։

ՍԱՂՄՈՍ. ՃԽԷ

Գովեա Երուսաղէմ զՏէր, և օրհնեա զԱստուած քո Սիոն։

Զի զօրացոյց զնիգս դրանց քոց, և օրհնեաց զորդիս քո ի քեզ:
Ո եդ զսահմանս քո ի խաղաղութիւն. պարարտու֊թեամբ ցորենոյ լցոյց զքեզ:
Առաքէ զբան իւր յերկիր, վաղվաղ ընթանան պատ֊գամք նորա:
Դնէ զձիւն որպէս զասր, և զմէգ որպէս փոշի ցանեաց:
Արկանէ զսառն որպէս պատառս, առաջի ցրտոյ նորա ո՞ կարէ կալ:
Առաքէ զբան իւր և հալէ զնոսա, շնչեսցէն հողմք և գնասցեն ջուրք:
Պատմէ զբան իւր Յակոբայ, զարդարութիւն և զի֊րաւունս Իսրայելի:
Ոչ այսպէս արար ամենայն ազգաց Տէր, և զդատաս֊տանս իւր ոչ յայտնեաց նոցա:

ՓՈԽ

Զքեզ Քրիստոս զովէ եկեղեցի փրկեալ քո սուրբ. ցընծալով տեսանէ ըզքեզ ըզփըրկողդ եկեալ հայրա֊կան իշխանութեամբ ի պըսակել ըզսուրբս քո:

Կանոնափոխ մեծի ուրբաթուն:
ՍԱՂՄՈՍ. ՃԺԸ

Իշխանք հալածեցին զիս ի նանիր, ալէլուիա. այլ ի բանից քոց երկեաւ սիրտ իմ. ալէլուիա:
Ցնծացայ ես ի բանս քո, որպէս այն որ գտանէ աւար բազում:
Զմեղս ատեցի և անարգեցի, և զօրէնս քո սիրեցի:
Եօթն անգամ յաւուր օրհնեցից զքեզ, վասն իրաւանց և արդարութեան քոյ:
Խաղաղութիւն բազում է այնոցիկ որ սիրեն զօրէնս քո, և ոչ գոյ ի նոսա գայթակղութիւն:
Սպասեցի փրկութեան քում Տէր, և զպատուիրանս քո սիրեցի:
Պահեաց անձն իմ զվկայութիւնս քո, և սիրեաց զնո֊սա յոյժ:
Պահեցի զպատուիրանս և զվկայութիւնս քո, զի ամե֊նայն ճանապարհք իմ առաջի քոյ են:

Digitized by Google

Փ. Մերձեսցին խնդրուածք իմ առաջի քո Տէր, ըստ բանի քում իմաստուն արա զիս :

Մտցեն աղօթք իմ առաջի քոյ Տէր, և բանիւ քով փրկեա զիս :

Բղխեսցեն շրթունք իմ զօրհնութիւնս քո, յորժամ ուսուցես ինձ զարդարութիւնս քո :

Խօսեսցի լեզու իմ զբանս քո, զի ամենայն պատուիրանք քո արդարութեամբ են :

Եղիցի ձեռն քո ի կեցուցանել զիս, զի զպատուիրանս քո ընտրեցի :

Ցանկացայ փրկութեան քում Տէր, և օրէնք քո խօսք իմ էին :

Կեցցէ անձն իմ, օրհնեսցէ զքեզ, և իրաւունք քո օգնեսցեն ինձ :

Մոլորեցայ ես որպէս զոչխար կորուսեալ. խնդրեա զծառայս քո, զի զպատուիրանս քո ես ոչ մոռացայ :

Փառք Հօր և Որդւոյ :

Կանոնադրութիւն մեծի շաբաթուն :

Դառնաս Տէր : Տես է Նախն 15 :

Բայց թէ կանոնադրութիւն ընդ առաջնոյն առնի, յետին քաղաքայն որ է այլոց մարգարէից՝ նա առնի : Իսկ եթէ ոչ առնի ընդ առաջնոյն, որպէս է առհասարակ ամենայն, չինի կանոնադրութիւնն առնի, Եւ Ես խաղաղութեան : Օրհնութիւն և փառք : Եւ ապա զշարն առնի ըստ յայնմ. և չինի հանգստեան առաւօտեան ընթերցուած լինի : Իսկ եթէ համբարձման օր լինի, կամ Խաչի տօն լինի, Այսօր անճառ առնի, և խաչելութեան առաւօտեան ընթերցուած լինի : Չինի առաւօտեանին. Նորոգող տիեզերաց. ապա Հոգւոյն Հանգուցելոց :

Բայց յորժամ զզատկական շաբաթն հանգստեան առնես, չինի շաբաթուն առնի առաջնոյ ըստ յայնմ. և ընթերցուած լինի առաւօտեան ըստ յայնմ. և չինի առաւօտեանն առնի յԱստուածանեղէն քանի մի : Եւ ապա ընդ Աստուածանեղէն կցորդեն զի տօն յԱրարիչ և մարգարէն. և կամ յԵս ասացին. կամ տօ է. և ապա Հոգւոյն Հանգ : Քրիստոս որդի : Հայր մեր :

## ՔԱՂՈՒԱԾ
## ՀԱՆԳՍՏԵԱՆ ՇԱՐԱԿԱՆԱՑ ՀԱՄՕՐԷՆ ՆՆՋԵՑԵԼՈՑ Ի ՔՐԻՍՏՈՍ

---

### ԱՌԱՋԻՆ ՁԱՅՆ

Քեզ վայելէ Աստուած օրհնութիւն. որ յարութեամբդ քո հանիս յաւիտենից ննջեցելոցն. Թագաւոր եւ իշխան վերօրհնեմք ըզքեզ: Ի միւսանգամ գալըստեանն քո Քրիստոս փառաց Թագաւոր. ի ձայն փողոյ նորոգեն հոգիք ննջեցելոցն. եւ յառնեն ի մեռելոց անապական մարմնով: Վասն որոյ եւ մեք ըզքեզ աղաչեմք Հայր երկնաւոր. դասաւորեա զննջեցեալսն մեր ի վերինն քո Երուսաղէմ. ի ժողովս անդրանկաց գրելոց ի յերկինս:

Զձայն արկեալ կենարարին աստուածային բարբառոյն. ասէ եկայք օրհնեալք Հօր իմոյ ժառանգեցէք. պատրաստեալ ձեզ ըզկեանսն ի հանդերձեալ երկրին: Ընդ առաջ ելանել քեզ հաւատով ի յօդըս վերինս. աստուածազգեաց լուսով պայծառացեալ ի դասս անմարմնոցն. ի լսել ըզձայն երանաւէտ կոչմանն: Ընդ աջմէ քումմէ կացո ընդ իմաստունս սուրբ կուսանսն. ի լուսեղէն առագաստին պայծառացեալ ի դասս անմարմնոցն. ի ժողովս անդրանկաց գրելոց ի յերկինս:

Զհոգիս ծառայից քոց Քրիստոս. ընկալ ի դասս անդրանկաց գրելոց ի յերկինս: Ընկալ վասըն սոցա ըզբանաւոր պատարագս ի մէնջ. եւ շնորհեա նոցա ըզթողութիւն զտանել յաւուրն յետնում:

Ո. ԿԻՐ. Ողորմեա ինձ Աստուած: Որ զառաջինն ոչ պահելով ըզպատուիրանըն մեռաք. շնորհեցեր քեւ օրինակ մեզ պատուիրան կենաց. զի պահելով կենդա-

Digitized by Google

նմանցուք. ողո: Որ ի խորհուրդ քո կամաւոր մահուանն եկեղեցի քո Քրիստոս. մեռանելով օրհնաց մեղաց. զի յարուցեալ ընդ քեզ նորոգեսցի ի փառս. ողո:

ԱԳ. Հայր բազումողորմ. խոստովանիմ առ քեզ որպէս զանառակ որդին. թող ինձ ըզմեղս իմ և ողորմեա: Տէր որ գըթացար ի կինըն քանանացի. գթա և յիս ի մեղաւորս և ողորմեա: Տէր որ դարձուցեր ըզմաք-սաւորն ի գիտութիւն ճըշմարտութեան. դարձո և զիս ըզմոլորեալս. և ողորմեա:

ՂԶ. Այսօր գոլով ի Բեթանիա. քո ամենազօր հրա-մանաւըդ. ձայնեցեր Ղազարու և դողացաւ մահ. դը-ժոխք պարտեցաւ ապականութիւն լուծաւ || կենդանարար Քրիստոս կեցո ըզմեզ: Այսօր գոլով ի Բեթանիա. զքո զաշխարհակեցոյց սուրբ զյարութիւնդ. յառաջա-գոյն ծանուցեր անապականաբար կոչմամբ զչորեքօ-րեայն ի թաղմանէ. կենդանարար: Այսօր գոլով ի Բեթանիա. երբայեցւոց մանկունքն ըսքանչացեալ առէ-ին. զՄարիամու և զեղբայրն ի թաղմանէ յարուցեալ. Որդւոյն Մարիամու. կենդանարար:

ՅԱՐ. Անճառելի Հօր էակից և խաչ ելեր կամաւ Հօր ողորմեա: Անմահութեանց տըւող Քրիստոս. ի գերեզման իջեր որպէս մարդ ողորմեա: Եւ յերրորդ աւուր յարեար. յոյս յարութեան ցուցար մեզ ողորմեա:

ՀԳ. Որ յամենայնի ես աստուածութիւն. և ի ձայն հընչման իջեր յերկնից սուրբ Հոգի. ողորմեա մեզ: Որ զամենայն լընուս զօրութեամբ քո. և ի դաս առաքելոցն իջեր բընակել սուրբ Հոգի. ողորմեա մեզ: Որ անբաժանելի ես յաստուածութեան. և ի հրեղէն լեզուս բաժանեալ հանգեար յառաքեալսըն սուրբ Հոգի. ողորմեա մեզ:

Digitized by Google

Մ. Ո՛ր զաւետիս Հոգւոյն ի հրեղէն ի հրեշտակէն ընկալայր ուրախ լեր. բերկրեալդ Տէր ընդ քեզ Մարիամ անհամբունացեալ։ Անըսկիզբըն Բանըն համեցաւ առնուլ մարդեղութեամբ ընկէցըն ի կուսէդ. Քրիստոս Աստուած թագաւորն յաւիտենից։ Աղաչեմք ըզքեզ սուրբ Աստուածածին. առ Քրիստոս բարեխօսեա փըրկել. զժողովուրդս քո զոր գընեաց արեամբն իւրով։

ԻԶ. Հրաշակերտ և զօրեղ փայտ խաչի քո Քրիստոս. զամենայն զօրութեան ի յերկրի երեւեալ. ‖ Եկայք ժողովուրդք երկրպագեսցուք։ Զոր Հրէիցըն ծածկեալ ղանթաքչելի ըզգանձըն. փափագմամբ թագուհւոյն փայտ կենաց յայտնեցաւ. Եկայք։

Փառք Հօր և Որդւոյ։

Սա է գէն յաղթութեան հաւատացելոց. մխոյեան և կնիք յաղթող ընդդէմ թըշնամւոյն. Եկայք։

Այժմ և միշտ։

Հաշտեա ի ձեռըն սուրբ մարմնոյ և արեան քո Տէր. եւ պարգեւեա նոցա դասել յաջակողմեանըն քո։

## ԱՌԱՋԻՆ ԿՈՂՄՆ

Ձեռըք քո արարին եւ ըստեղծին զիս ի հողոյ. ի յօրհնել ըզքեզ Աստուած յաւիտեան։ Իսկ պատրանօք բանսարկուին խափանեցայ յանձառ լուսոյն. եւ դարձայ անդրէն ի հող յորմէ ստեղծայ։ Մըխիթարիչ սուրբ Հոգի լուսաւորեա զմեր ննջեցեալսն. եւ հանգո զհոգիս նոցա ընդ սուրբըս քո։

Հայր անոխակալ եւ բարեգութ մաղթելով հայցեմք ի քէն վասըն մեր ննջեցելոցն արժանաւորել. հանդըստեան օթեվանին սըրբոցն։ Անձառ ծընունդ Հօր Որդի. որ մահկանացուացս կեանք ես. զհոգիս ննջե-

ցելոց մեր ընկալ եւ արժանաւորեա. Հանգըստեան օթեվանի սրբոցն։ Եւ նորոգող սուրբ Հոգի. յորժամ նորոգես զապականեալսն. յայնժամ շնորհեա և մեր ննջեցելոցն արժանաւորել. Հանգըստեան։

Յորժամ յերկնից գոչէ փողն ազդեցութիւն առնելով տիեզերաց ի դատաստանն ահաւոր. յայնմ աւուր յահեղին || յիշեա Տէր եւ ըզմեր ըզննջեցեալսն եւ հանգո ընդ սուրբըս քո։ Յորժամ ճառագայթք աստուածութեանըդ փայլեն ի յարեւելից. եւ զըպրութիւնըք հրաշիծցըն բանին յայնմ աւուր յահեղ. յիշեա։

ԱԳ. ԿՐ. Որ առաքեցեր ի հայրական ծոցոյ ծածկեալ խորհուրդ ընդ Հօր յաւիտեան. եւ առեր մարմին զմեղուցելոյ նախաստեղծին յանապական կուսէն անճառ միութեամբ. || վասըն մերոյ փըրկութեան ողորմեա։ Որ փոխանակ ճաշակացըն դառնութեան մահաբեր պըտղոյն. անճաշակ լինելով քո քառասնօրեայ քաղցրացուցեր յուսով ըզլուծ նոր քո օրինաց. վասըն։ Որ աջակողմ աւազակին բացեր ըզդուըն դրախտին կենաց. բաց եւ մեզ մեղաւորացս ողորմութեամբ որք ընդ նըմին զքեզ դաւանեմք Տէր և Թագաւոր. աղաչեմք ըզքեզ ողորմեա։

ԱԳ. Ծով կենցաղոյս. հանապազ զիս ալեկոծէ։ Մըրըրկեալ մըլիք. թըշնամին ինձ յարուցանէ։ Նաւապետ բարի. լեր անձին իմոյ ապաւէն։

ԴՁ. Այսօր կանգնեցաւ. աւազան մըկըրտութեան ի թողութիւն մեղաց մերոց։ Այսօր Տէրըն մեր. լըւանայր զոտս աշակերտացն և պատուիրէր զայս առնելով։ Մի ոմն ի ձէնջ եղբարք. մատնելոց է զիս ի մահ և որոշի յաշակերտացդ։ Զայն լըւեալ Պետրոսի. ակնարկէր առ

Յովհաննէս հարցանել թէ ով իցէ։ Բանըն զոր ասաց Յիսուս. տըրտմեցոյց զիւր զաշակերտսն եւ խռովեցան ամենեքեան։

ՅԱՐ. Իջեր յերկնից Որդի Աստուծոյ. եւ մարմնացար ի սրբոյ կուսէն. որ անմեկնելիդ ես ի Հօրէ ողորմած։ Եկիր ի չարչարանըս կամաւորապէս Աստուած. եւ խաչեցար վասն ազգի մարդկան. եւ ի գերեզման իջեր անապական ողորմած։ Զմահ լուծեր եւ զաշխարհս ազատեցեր կարողապէս Տէր. եւ ի մեռելոց յարեար իշխանութեամբ ողորմած։

ՀԳ. Որ առաքեցար ի Հօրէ Հոգիդ անեղ եւ համագոյ. աղաչանօք տնօրինաբար քում էակցին լինել մխիթարիչ սուրբ առաքելոցն. ‖ աղաչեմք ըզքեզ ողորմած։ Որ իջեր տիրաբար յերկնից սաստիկ հողմով նըման Աստուածային յայտնապէս. եւ ի հրեղէն լեզուս բաժանեալ հանգեար ի դասս առաքելոցն. աղաչեմք։ Որ արբուցեր երկնաւոր գինեաւն իմաստութեան զհոգիս սրբոց քոց առաքելոցն. որք արբուցին տըրտմեցելոց որդւոց Ադամայ ըզբաժակն ուրախարար յայգւոյն Եդեմայ. աղա։

Մ. Ով գերահրաշ ծաղիկ բուրեալ յԵդեմայ. հոտ անմահութեան ծնընդոցս Եւայի յորմէ սփռեցաւ մահ ընդ տիեզերս ‖ օրհնութեամբ ըզքեզ մեծացուցանեմք։ Դու ես լուծիչ երկանց բարձող անիծից. ծագումն արեւու լուսոյն ճըշմարտի որով հերքեաւ խաւարն առաջին. օրհ։ Ըզքեզ ունիմք բարեխօս կոյս անհարսնացեալ մայր անարատ Էմմանուէլի տաճար Բանին Հօրն երկնաւորի. օրհնութեամբ։

ԽՁ. Սեղան քո Տէր զօրութեանց. հաւատով կանգնեցաւ ի խորանի քում ‖ եկայք ժողովուրդք երկըրպագեսցուք։ Վէմ պատուական. ի խորանի քում հիմնեցաւ այսօր. եկայք։

Digitized by Google

Փառք Հօր և Որդւոյ։

Ի սմա մատուցան. ճշմարիտ պատարագ և զենումն անապական եկայք ժողովուրդք երկրպագեսցուք։

Այժմ և միշտ։

Զարհուրեալ դողան արարածք ի ձայնէ սովորական փողոյն. յորժամ հարկանէ հրեշտակապետն եւ կոչէ ի դատաստան զազգս որդւոց մարդկան. յայնմ աւուր յահեղին յիշեա Տէր եւ ըզմեր ըզնը ննջեցեալն եւ հանգո ընդ սուրբս քո։

## ԵՐԿՐՈՐԴ ՁԱՅՆ

Հրեշտակային ձայնիւն օրհնեսցուք զամենասուրբ զԵրրորդութիւնն փառաւորելով ըզՀայր. որ վերակոչեաց զամենեսեան ի մահուանէ յանմահութիւն։ Երգեցէք Տեառն երգ նոր եկեղեցիք սրբեցելոց. Քրիստոսի երկրպագելով. որ վերադարձեաց զամենեսեան։ Սրբասաց ձայնիւն օրհնեսցուք հոգեւորական հընչմամբ գովեսցուք. սուրբ զՀոգին փառաւորելով. որ վերահանգոյց զամենեսեան։

Ի ձայն փողոյ գալստեան քո Տէր ամենայն հոգիք զարթիցեն. կալ ի դատաստանի քում Քրիստոս Աստուած մեր։ Յորժամ հնչէ բարբառն ահագին և հարկանի փող յարութեան մերոյ. եւ մեք գոչելով ասեմք փառք գալստեան քո Տէր։ Յորժամ առնես հատուցումն Տէր և սուրբք քո պարծեսցին ի քեզ. եւ մեզ շնորհեսցես Փըրկիչ կալ ի յաջմէ քումմէ։

Թագաւոր անմահ արարիչ յաւիտենից. մարդասիրութեամբդ քո խոնարհեալ յանձինս մեր. ստեղծիչ կենդանեաց և հանգուցիչ ննջեցելոց։ Ի խաչին բեւեռեցար զմահու լուծեր զիշխանութիւն. յաւիտենից ըզննջեցեալսըն վերածեր յանմահ ի կեանս. ստեղծիչ։

ԱԳ․ ԿԻՐ․ Ըստ աւետեաց մարգարէին որ առ փըրկեալքս արեամբ գառինդ․ ցնծամք եւ մեք ծառք անտառի ընդ գալուստ Տեառնըդ կըրկնակի․ շնորհեա մեզ Տէր ընդ արդարոցն ընդ առ ի քէն տընկեալ ծառոցն․ Այժըմ յուսովը զուարճանալ եւ յերկրորդին ընդ քեզ ցընծալ ։ Սըմին նըման տայ աւետիս Զաքարիաս Նոր Սիոնի․ եթէ ուրախ լեր անձամ գայ առ քեզ խոնարհ եւ հեզ արքայ․ Նըստեալ ի յէշ և յաւանակ կըրկին ազանց զոլ օրինակ․ Նըմանեալ յաթոռ քերովբէից նիստ զըթութեամբ ի մեր հոգիս ։ Զանհեղ փառաց քոց երեւումն որ լինելոց է յերկրորդումն․ Ետես Դաւիթ յառաջագոյն ծանոյց կանխաւ ազդմամբ Հոգւոյն․ Թէ յայտնապէս Աստուած գայցէ հուր առաջի իւր բորբոքէ․ յայնժամ Յիսուս ի մեզ խնայեա գըթա Քրիստոս եւ ողորմեա ։ Աստուածածին անհարսնացեալ յերկրէ երկնից հարսն ընծայեալ․ յորժամ բազմիս լուսոյ նըման քո Միածնիդ յաջակողմեան․ յայնժամ մաղթեա ընդ մեր ըզնոյն փըրկել ըզմեզ յահեղ բոցոյն․ համադասել ընդ արդարոցն երգել ըզփառս ընդ երկնայնոցն ։

ԱԳ․ Դարձո զցասումըն քո ի մէնջ յաղաղակել հողեղինացս․ բազմագութ Տէր խնայեա և մի կորուսաներ ։ կանգնեա զանկեալս ի գլորմանէ զվիրաւորեալս ի Թըշնամւոյն․ որ բըժիշկդ ես հիւանդաց բըժըշկեա զիմ զհիւանդութիւնս ։ Ի յանցանաց իմոց թախծեալ անձն իմ գոչեմ որպէս ըզմաքսաւորն․ Աստուած քաւեա զիս ըզմեղաւորս ։

ԴՁ․ Յաստուածային ձայնէ գոչմանըն սարսեցին գողալով կարապետըք դըժոխոցն․ եւ մեռեալն եկն արտաքս անապական ։ Կացեալ ի դուրս այրին և ձայնէր ազդ արարող բարբառովն ի գերեզմանն․ Ղազա-

րէ եկ արտաքս անապական: Ելեալ ի գերեզմանէն երիզապինդ պատանօքըն մեռեալըն. հրամայեաց լուծանել ի կեանսըն յաւիտենից:

ՑԱՐ. Իջեր յերկնից Որդի Աստուծոյ ազատեցեր զարարածս. անկանիմ առաջի քո ողորմեա ինձ Աստուած: Ի խաչին բեւեռեցար Աստուած և ըզմարդն ի կապանաց մահու արձակեցեր. եւ զիս մի անտես առներ. որ մեղօքս եմ մեռեալ: Ծագումըն Հօր յանմատոյց լուսոյն որ իջեր ի գերեզման. կենդանացուցեր զարարածըս քո. եւ զիս մի անտես առներ. քանզի քեզ միայնոյ մեղայ:

ՀՈԳ. Սրբափայլ հոգւոյ նըման անհեղագոյն սաստիկ հընչմամբ. երեւեցար ի վերնատանն Հոգիդ դասուն երկոտասան. որք առ ի քէն մըկըրտեցան որպէս զոսկի հրով մաքրեցան. ‖ մաքրեա ի մէնջ ըզմէգ մեղաց և ըզգեցո ըզլոյս փառաց: Եկիր յերկիր աստուածաբար դատել զաշխարհս իշխանաբար. ընդ արդարութեան և ընդ մեղաց և ընդ չարին դատաստանաց. բացեր ըզգանձդ անհիւթական պարգեւս ետուր որդւոց մարդկան. մաքրեա: Սէրն ի սիրոյ զսէրդ առաքեաց յինքըն զանդամս իւր քեւ յօդեաց. զեկեղեցի իւր զոր շինեաց եօթըն սեամբ քո հաստատեաց. տըտնես ի նմա եդ զառաքեալսն եօթնեակ շնորհօք քո զարդարեաց. մաքրեա ի մէնջ:

ԾՆ. Խոնարհեցար ի բարձանց եւ մարմնացար ի կուսէն. որ նըստէիրդ ի քրովբէս արարիչդ արարածոց: Երկինք չէին բաւական փառաց անման անեղիդ. արգանդ կուսին ժուժկալեաց սմալ ընդունել ըզգանձդ երկնային: Ցորմէ սարսեալ սերովբէքն ոչ իշխէին մերձենալ. ի խանձարուրս պատեցար եւ եդար ի մսուր յանբանից:

ԻԶ. Այսօր խընդրի պատուական փայտ խաչին աւանդեալն ի Գողգոթայ ի ձեռն աստուածասէր դըշխոյին. Եկայք հաւատացեալք երկըրպագեսցուք աստուածային սուրբ նըշանիս: Այսօր ընծայէ Գողգոթայ ըզծածկեալն ի յերկրի. վերաբերեալ անուշահոտ խընկովք ի ձեռն երանելւոյն Յուդայի. Եկայք:

Փառք Հօր և:

Այսօր ի ձեռըն փըրկականն սուրբ խաչին կենագործի պատանին մեռեալ. և ողբայ սատանայ ըզկործանումն իւր. իսկ մեք Քրիստոսի հաւատացեալք երկըրպագեսցուք աստուածային սուրբ նըշանիս:

Այժմ և միշտ:

Արժանաւորաց քոց աղօթիւք յիշեա ըզմեր ըզնընջեցեալսն. յորժամ գայցես անճառ փառօք հատուցանել մարդկան ըստ գործս. և մեր ննջեցելոցըն շնորհեա դասել ընդ սուրբըս քո:

## ԱՒԱԳ ԿՈՂՄՆ

Քեզ վայել է Աստուած օրհնութիւն որ յանմատոյց աթոռ անմահից փառաբանիս ի բարձունս. զնընջեցեալսըն յանուն քո ընկալ յերկնային քո սուրբ յառագաստ. Որ միայնդ ես մարդասէր: Որ ունիս իշխանութիւն մահու և կենաց յիշեա զհոգիս ննջեցելոց մերոց և հանգո ընդ սուրբըս քո ի խորան քում սիրեղաց. որ: Որ յամենայնի ես օրհնեալ Տէր. արժանի արա ըզծառայս քո վերըստին նորոգման. Ի լըսել ըզձայն աստուածային փողոյն ընդ առաջ ելանել քոց փառացդ. որ:

Թագաւոր խաղաղութեան որ քաղցրութեամբ խնա-

մես զքո զարարածս. յիշեա || Տէր զհոգիս ննջեցելոցն ընդ սուրբս քո եւ դասաւորեա ի յաւուրն այցելութեան։ Որ կոչեցեր ի դրանց մահու ըզսիրելին քո զՂազարոս. եւ ծանուցեր զաստուածութիւնդ ընդհանուր տիեզերաց. լուսաւորեա Տէր։ Ի տաճարի քում սրբութեան մատուցանեմք քեզ պաղատանս արտասուալից. պայծառացո Տէր։

Ի գիշերաց կանխեալ սաղմոսիւք եւ արտասուօք հայցեմք ի քէն || Քրիստոս յիշեա զննջեցեալսն ի սուրբ անուանդ քո. եւ հանգո զհոգիս նոցա ընդ սուրբս քո։ Որ յանմարմնոց վերօրհնիս առ քեզ կարդամք եւ պաղատիմք Քրիստոս։

ԱՊ. ԿԻՐ. Որ պատուիրան ճշմարտութեան աւանդեցեր եկեղեցւոյ քո Քրիստոս. անսահման ժամանակաւ. աղօթել միշտ առ Աստուած հոգւով եւ մտօք։ Որ ըզբան քո օրհնաց հաստատեցեր գործով մեզ օրինակ. հանելով զգիշերն ի գլուխ յաղօթսն Աստուծոյ. բնութեամբ մերով տնօրինաբար. որով կըրկնի ծնունդ ամենայն։ Վասն որոյ եւ մեք պաղատեսցուք առ քեզ Քրիստոս. շնորհեա մեզ յամենայն ժամ լինել քեզ յանդիման. մաքուր աղօթիւք ըստ անմարմնոցն որ յերկինս։ Աղաչանօք Աստուածածնին անապական քում ծընողին. զհամանալի աչըս սրտից մերոց. բացցես ողորմութեամբ հայցել ի լոյս քո Քրիստոս։

ԱՊ. Յամենայն ժամ. աղաչանք իմ այս ե ս:' ս մ մն. Ի մեղաց իմոց սուրբ արա զիս Տէր։ Յանցանաց իմոց զարհուրի սիրտ ի ս:' ս մ մմ. աղաչեմ ըզքեզ թող ինձ Տէր։ Արտասուաց իմոց մի լըռեր Տէ ս:' ս մ մր. զի պանդուխտ եմ ես յանցաւոր երկրի։

ՂՋ. Իմաստուն կուսանքն պատրաստեալ էին լապտերաց. ելին ընդ առաջ երկնաւոր փեսային վառեալ լապտերօք։ Իսկ յիմարաց կուսիցն ունայնացեալ էր յիւղոյ. անպատրաստ գըտան գալըստեան փեսային շիջեալ լապտերօք։ Վասն որոյ եւ մեք պատրաստեսցուք իւղ հոգեւոր. զի մտցուք ի յառագաստ անմահ փեսային վառեալ լապտերօք։

ՅԱՐ. Ողորմեա ինձ Աստուած իմ ողորմեա։ Որ ի յերկնից իջեր Բանդ Աստուած եւ վասըն մեր մարմնացար ի սրբոյ կուսէն. ողորմեա։ Որ ի խաչին տարածեցեր զանարատ բազուկս քո. եւ վասըն մեր հեղեր զարիւն քո սուրբ. ողորմեա։ Որ ի գերեզմանի եղար անապական. եւ յարուցեալ նորոգեցեր զաշխարհս. ողորմեա։ Որ ի յերկինս համբարձար ամենակարող. և ընդ աջմէ հօր նստար յաթոռ փառաց. ողորմեա։

ՀԳ. Իջեր Տէր ողորմութեամբ քո յաշխարհս. եւ ըզմեռեալ բնութիւնս ի կեանս վերափոխեցեր։ Ելեր Տէր առ Հայր փառօք ի յերկինս. եւ մխիթարիչ առաքելոցն առաքեցեր սուրբ զՀոգիդ։ Բացեր Տէր այսօր ըզգանձդ երկնային. եւ բաշխեցեր առատապէս պարգեւս ողջամտ բընութեանս։

ՄՆ. Որ ողորմեցար ի մեղս ծնեալ մարդկան Հայր երկնաւոր ըստ մարգարէին. եւ ետուր բնութեանս այսօր պարգեւ ըզկոյսըն սուրբ ըզծնօղ Որդւոյդ միածնի. Մաղթանօք սորա Տէր մեզ ողորմեա։ Որ ցուցեր ի մեզ յամպոյ օրինաց Որդւոյդ այսօր զկոյսըն Մարիամ. յորմէ ծընեալ մարմնով եւ բարձեր նովաւ ըզմեղս նախաստեղծին Ադամայ. մաղթանօք։ Որ մաքրեցեր Հոգւոյդ սուրբ ըզսիրտ եւ զարգանդ մօր քո փառակցին. այսօր

ամուլ ծնողաց նորին ետուր ըզմայր Բանին զօրհնիչն Եսայի. մաղթանօք սրբա Տէր մեզ ողորմեա։

ԽԶ. Ճառագայթ փառաց Հօր Որդիդ միածին. որ ըզլոյսդ անվայրափակ մարմնով պարագրեալ. ‖ այսօր ի Թաբօր փառօք փայլեցեր։ Որ անտես սրովբէից անհաս ի վեր քան ըզբան. ծառայի կերպիւ պարածածկեալ ըզլոյսդ անըստուեր. այսօր ի Թաբօր փառօք։

Փառք Հօր և։

Որ հրեղինացն անմերձենալի հուր աստուածութեանդ. ի հողեղէնս խոնարհեալ լոյսդ արփիական. այսօր ի Թաբօր փառօք փայլեցեր։

Այժմ և միշտ։

Որ մարմնացար վասն մեր. աղաչանօք Աստուածածնին Քրիստոս յիշեա զննջեցեալսն ի սուրբ անունդ քո. եւ հանգո զհոգիս նոցա ընդ սուրբս քո։

## ԵՐՐՈՐԴ ՁԱՅՆ

Ի ձայն մեծի զուարթնոյն և ի հնչումն հրաշալի փողոյն. ուր հողացեալ մարմինք մարդկան նորոգին. ‖ յայնժամ առուր ահեղին յիշեա Տէր և ըզմեր ըզննջեցեալսն եւ հանգո ընդ սուրբս քո։ Յորժամ նշան տէրունեան ճառագայթիւք փայլէ. և թագաւորքդ թագաւորաց փառօք տեսանի. յայնժամ։ Յորժամ ատեան դատաստանին դնի. և դպրութիւնք հրաշիցն բանին. յայնժամ։

Որ երկայնամիտդ ես Տէր. քաղցր և անոխակալ հանգո զհոգի քո ծառայից. ‖ զի մի դարձցի տնանկ ամաչեցեալ յաւուրն ահեղ ատենին։ Զյիշատակ հրաժարելոցն ի հաճոյս քեզ ընկալցիս. եւ զուխտըս մեր

ընկալ որպէս զԱբելին զնուէրն և զԱբրահամուն. զի՛։
Ի խորան քում սրբոյ հանգուցես ընծայս քո.
Եւ զհոգիս նոցա դասեսցես ընդ սուրբս քո. զի՛։

Որ խոնարհեցար յերկնից Բանդ Աստուած. և առեր մարմին ի սրբոյ կուսէն. ‖ յիշեա ըզննջեցեալսն ըս մեր. յորժամ գայցես անճառ փառօք զի դու ես Տէր ամենայն երկրի։ Որ ունիս իշխանութիւն մահու եւ կենաց. եւ խաչիւդ քո լուծեր զերկունս մահու. յիշեա։

ԱԳ. ԿԻՐ. Որ արարեր զօրութեամբ զիմանալեացն աշխարհ վերին. եւ ի նմա հաստատեցեր տընտես ըզպետս հրեղինացն. ‖ օրհնեմք զանհասանելի զօրութիւնդ։ Որ տիրապէս մեծատունդ ստեղծեր երկրորդ աշխարհ զգալի. եւ ի դրախտն որ յադենի տընտես եդեալ զմարդն առաջին. օրհնեմք։ Որ շինեցեր բարձրագոյն զեկեղեցի քո խորհրդեամբ. եւ ի սմա կարգեալ տընտես զքարոզս Բանին ճշմարտութեան. օրհնեմք։ Անտանելւոյն տաղաւար բարձրոյ էիցըս բարձրոյին. որ ծընար զԱստուած մարմնով զանմարմնաբար ծընունդըն հօր. բարեխօսեա վասըն մեր Աստուածածին Մարիամ։

ԱԳ. Զերծո զիս յորոգայթէ որսողին. եւ յամենայն վըտանգից ապրեցո. ‖ եւ ողորմեա։ Յաներեւոյթ թըշնամւոյն եւ ի գաղտնի նետից բանսարկուին պահեա. եւ ող։ Փըրկեա զիս ի յանցանաց մեղաց իմոց. եւ նորոգեա զիս հոգւով գիտութեան. եւ ող։

ԴՁ. Արկողդ ըզլոյս որպէս զօթոց. այսօր անճառ խոնարհութեամբ ի վերնատունն խորհրդոյ ըզգեստ ծառայի ըսփածանել յանձն առեր. օրհնեմք զեկեալդ ի կամաւոր չարչարանս։ Որում երկրպագեն դասք

հրեշտակաց խոնարհեցար ի լուանալ զոտս հողեղէնս. բժշկել սոքօք ըզգարշապարս նախահօրն. բժշկեա զհոգւոյ իմոյ զհիւանդութիւն: Որ ի խորհուրդս փըրկականս եկեղեցւոյ. բաշխեցեր աշակերտացն զմարմինըդ քո. նորոգելով ըզմահացեալսն ի ճաշակմանէ. հաղորդս այսմ ընկալ ըզմեզ միայն մարդասէր:

ՑԱՐ. Ցամենայնի բազումողորմ Աստուած. նայեա յիս գթութեամբ եւ խնայեա || զի դու միայն ես մարդասէր: Եւ խաչիւդ քո կենարարաւ պահեա. եւ յարութեամբդ քո փրկեա և ապրեցո զիս: Եւ ի միւսանգամ ի գալստեան քո Տէր. վերըստին զիս նորոգեա և ապրեցո զիս դու միայն ես մարդասէր:

ՀԳ. Որ համագոյդ ես Հօր և Որդւոյ. անճառաբար բըղխումն ի միշտ էէն. այսօր բըղխեցեր ջուր կենդանի յերուսաղէմ || Հոգի Աստուծոյ ողորմեա: Որ արարչակից ես Հօր և Որդւոյ. որով կենդանածնեալք ի ջուրս արարածք. այսօր որդիս Աստուծոյ ծնանիս ի ջուրց Հոգի: Որ փառակից ես Հօր և Որդւոյ. եւ քննես ըզխորս Աստուծոյ. այսօր խորագէտս իմաստից զյիմարս աշխարհի արարեր Հոգի:

ԾՆ. Դասք անմարմնականք երկնաւոր զօրացն. ի մէջ հովուացն օրհնէին ըզծնունդն լուսոյ. մեծին ի Հօրէ մեզ ի փրկութիւն: Եւ մոգքն աստեղբ նըշանաւ. եկին ի Բեթղեհէմ երկիրպագին Տեառն եւ ի յայրին մատուցին ըզընծայս խորհրդոյ: Եւ հովիւքն երգեն ընդ հրեշտակս. փառք ի բարձունս մեծին Աստուծոյ որ եկիր և փրկեցեր ըզտիեզերս քոյով յայտնութեամբդ:

ԽՁ. Քեզ Քրիստոսի կաթուղիկէ եկեղեցւոյ շնորհողի. զյաղթական ըզպատուական զաստուածընկալ սուրբ նը-

շանս. մատուցանեմք զօրհներգութիւն միշտ ի բարձունս։ Սա կամաւ քո Քրիստոս եւ Թեւոք ամենազօր սուրբ Հոգւոյն. եւ դասուք հրեշտակաց Թռուցեալ եկաւորի. Ի լեառըն վարագայ բընակիլ ի նմա։

Փառք Հօր և։

Եկայք ժողովուրդք. երկրպագեսցուք աստուածային սուրբ նըշանիս. համբարձէք միաբան ըզձեռըս ձեր ի սըրբութիւն. եւ ըզբնակեալն ի սմա միշտ փառաւորես-ցուք։

Այժմ և միշտ։

Ի նըստել քո յատենի դատաւոր ահեղ. աղաչանօք սուրբ Աստուածածնին. յիշեա ըզնընջեցեալըն ըմեր յորժամ գայցես անճառ փառօք. քանզի քո են փառաւորութիւնք յաւիտեանս ամէն։

ՎԱՌ ՋԱՑՆ։

Լոյս ի լուսոյ զմեզ լուսաւորեա. որ փառօք Հօր համ-դերձեալ ես գալ ի դատել զերկիր. Արժանաւորեա եւ ըզմեր ըզնընջեցեալսն. անճառ խոստմանց քոց ընդ սուրբըս քո։ Հօր եւ Հոգւոյ համագոյակից. ի տիեզե-րական ահեղ ատենին. արժանաւորեա։ Երկնի եւ երկրի արդար դատաւոր. յորժամ հատուցանես ըստ գործոց իւրաքանչիւրոց. արժանաւորեա։

Որ արարիչդ ես հրեղինաց եւ հողեղինաց. եւ մըշտընջենաւոր փառաբանիս ի բանաւոր պաշտօնէ-իցս. Ի քէն հայցեմք թողութիւն շնորհեա նըն-ջեցելոց մերոց։ Որ ի յերկրի երեւեցար եւ ընդ մարդ-կան բընակեցար. եւ անմահութեան պարգեւեցեր մեզ մահկանացելոցս. Ի քէն։ Յորժամ նըստիս յաթոռ

փառաց դատողական իշխանութեամբ. եւ փառաւո-րեաս առ ի քէն փառօք ընդդիմս արեան քո Տէր. ի քէն:

Որ անբաւ քո մարդասիրութեամբդ. գթացար յազգըս մարդկան ծընեալ ի կուսէն. ընդ ծը-նեալս. սուրբ առաջնոյն || ընդընդլեցեալսն ը-մեր ընդ սուրբքս քո հանգոյ թագաւոր յաւիտե-նից: Որ ի վերայ խաչին զենար որպէս գառն. եւ զմարմին և զարիւնդ քո բաշխեցեր ի փրկութիւն աշխարհի. զհաղորդեալս մարմնոյ քո և արեան ընդ ըզնըն:

ԱՊ. ԿԻՐ. Օրհնեմք զքեզ անըսկիզբըն Հայր Որդւոյդ միածնի. զոր առաքեցեր ի դարձումն մոլորեալ ոչխա-րին. դարձո եւ զմեզ ի մեղաց Որդւոյ քո չարչա-րանօք: Գովեմք զքեզ Բան եւ լոյս որ զտէրական քո պատկեր լուսով ճրագի քո գտեալ վերականգնեցեր. կանգնեա եւ զանկեալքս մեղօք քոյին սուրբ չարչա-րանօք: Բարեբանեմք զփառակիցըդ Հօր զՀոգիդ ճըշ-մարիտ. որ նորոգեցեր ըզհնացեալքս մեղօք հընոյն Ա-դամայ. նորոգեա եւ զմեզ ի մեղաց նորոգութեամբ քո շնորհաց: Ուրախացիր բարձրելոյն հովանացեալ զօրութեամբ եւ բնակարան սուրբ Հոգւոյն որով ծընար զԲանն Աստուած. բարեխօսեա վասըն մեր Աս-տուածածին Մարիամ.

ԱՊ. Քրիստոս Աստուած ամենակալ. || Ողորմեա Ա-մեա: Անօրէնութեամբ ի մեղս երկնեաց զիս մայր իմ. աղաչեմ Փրկիչ ողո: Վիրաւորեալ մեղօք անկանիմ առ քեզ Փրկիչ մի անտես առներ ողո:

ԴՁ. Շնորհեա մեզ Տէր ընդ աղքատաց օրինակին Ղազարու ժուժկալութիւն. զի կամաւոր աղքատութեամբ

Digitized by Google

արքայութեանդ երկնից ընդ նմին լիցուք արժանի. Լուր մեզ եւ ողորմեա Քրիստոս Աստուած: Որ փոխանակ հացին կարօտութեան զհացն անմահութեան նմա շնորհեցեր. եւ ընդ մեծատանն անգըթութեան ի գոգն Աբրահամու ըղձեա ընկալար. լուր մեզ եւ ողորմեա Քրիստոս Աստուած: Լուսաւորեա զաչըս սըրտից ստանալ մեզ ողորմութեամբ ի քէն Տէր զողորմութիւն. զի մի ընդ մեծատանըն հայցեսցուք ի բոց հնոցին ծագիւ մատին ջուր ի զովացումն. լուր:

ՅԱՐ. Որ տըրտմահանգորդ քո չարչարանօք խաչին. պատեցեր ըզմարդն ի տըրտմագգեաց փայտէն. եւ ի մեղսաճաշակ պըտղոյն. Քրիստոս Աստուած եւ մեզ ողորմեա: Որ մահուամբ քո կենդանի և մեռելութեամբըն յերկրի. նորոգեցեր դարձեալ զաշխարհս և զհողացեալ բնութիւնս. Քրիստոս: Որ երեքօրեայ յարութեամբըդ քո և համբարձմամբըդ յերկինըս. վերածեր ըզմարդն առ կենաց փայտն եւ յանմահական ճաշակն. Քրիստոս:

ՀԳ. Այսօր ցընծան դասք առաքելոցըն գալըստեամբ Հոգւոյն Աստուծոյ. զոր մըխիթարեաց փոխանակ Բանին մարմնացելոյ եղեալ ընդ նոսա. փառըս տացուք նըմա սըրբասաց ձայնիւ: Այսօր բըղխեաց ջուր կենդանի յԵրուսաղէմ յորմէ լըցան գետք աստուածայինք. եւ ընթացեալ արբուցին տիեզերաց զքառավըտակ աղբիւրըն Եդեմայ. փառըս: Այսօր ցօղով իմանալեաւ յամպոց Հոգւոյն զուարթացան բոյսք եկեղեցւոյ. պարարտացան դաշտք արդարութեամբ եւ գեղեցկացան անապատք մաքուր կուսութեամբ. փառըս տացուք նըմա սըրբասաց ձայնիւ:

ՄՄ. Աստուածածին խորան լուսոյ. անվայրափակ

Digitized by Google

արփիոյն կենաց որ եղեւր արեւելք արեգականն ար-դարութեան. եւ նստելոցս ի խաւարի լոյս ծագեցեր. || վասն որոյ ամենեքեան ըզքեզ միշտ մեծացուցանեմք: Անապական տաճար. եւ մորենի անկիզելի որ զան-շէջ հուր աստուածութեանն ի քեզ տարեալ կրեցեր. որով բնութեանս կիզեալ շիջաւ կրից բոց. վասն: Կեն-դանի տապանակ. կտակարանաց նորոյ ուխտիս որով ելք յերկիր աւետեաց հորդեալ. Հոգւով ի քեզ տը-պաւորեալ Բանին. վասն:

Խջ. Ով պանծապան որ ծագեցար յԵդեմայ. Նշան յաղթութեան ընդդէմ աներեւոյթ թշնամւոյն: Դրան փակելոյ դրախտին բացող եւ առաջնորդ աւազակին. որ զբոցեղէն սուրըն կապտեաց ամենեղին հրամանաւ:

Փառք Հօր և:

Քեւ ցնծան լուսորայինքս ամենայն. ի միւսանգամ քո գալըստեանն. եւ յաւէժ ըզուարճանան դասք անմարմնոցն առէկիցս:

Այժմ և միշտ:

Որ ըստ նմանութեան մահու քո տընկակից արարեր. եւ երկնից արքայութեանըդ ժառանգորդ լինել խոստացար. զհաւատացեալս զալըս-տեալն քո Տէր ըզննջեցեալսըն մեր ընդ սուրբսըն քո հանգո թագաւոր յաւիտենից:

ՉՈՐՐՈՐԴ ՁԱՅՆ

Քանզի զքեզ օրհնեն իշխանութիւնք երկնից թագա-ւոր փառաց. ամենակալ ամենաարարող թող ըզմեղս մեր ննջեցելոցն || և հանգո ի խորանի քում ի յար-քայական քո հանգստեան: Որ ի նախնումն ըզմարգա-

Digitized by Google

րէն Մովսէս․ լուսաւորեցեր աստուածային փառօք տեսլեամբ աստուածութեանդ քո․ լուսաւորեա եւ զմեր ըմբռնեցեալսն և հանգո։ Բարեխօսութեամբ սուրբ Աստուածածնի ծնողի և մօր քո․ յիշեա զգինս արեան քո Տէր․ եւ դասաւորեա յերանաւէտ յանթառամ և յանտրտում ի կեանսդ․ ի յարքայականին հանգստեան։

Փառք քեզ Հայր․ որ կենարարդ ես մարմնոց եւ զօրացուցիչ հոգւոց․ ընկալ զօրհնաբանութիւն հոգւոյս յանձնառական քո հանգիստ։ Մարդասիրի Հօր Որդի․ որ պատկերակից եղեր հողեղինացս եւ խաչեցար․ ընկալ զօրհնաբանութիւն հոգւոյս յանձնառական քո հանգիստ։ Ամենազօր սուրբ Հոգի․ որ անդորրիչ ես նեղելոց եւ մխիթարիչ հոգւոց․ ընկալ։

Ի հանգիստ քո Տէր․ ուր ամենայն սուրբք քո հանգչին հանգո զհոգիս ծառայից քոց ընդ սուրբս քո մարդասէր։ Դու Աստուած որ իջեր ի դժոխս․ զերկունս մահու լուծեր զկապեալսն արձակեցեր եւ զհոգիս ծառայից քոց ընդ սուրբս քո հանգո մարդասէր։

ԱԳ․ ԿԻՐ․ Որ զօրէնս սրբութեան պահոց նախ ի դրախտին աւանդեցեր․ զոր ոչ պահելով նախաստեղծքն ճաշակմամբ պտղոյն ճաշակեցին զդառնութիւն մեղաց եւ մահու․ վասն որոյ շնորհեա մեզ Տէր ճաշակել զքաղցրութիւն քոց պատուիրանաց։ Որ զանազան վիրօք մեղաց հարաք յոգիս ի թշնամւոյն․ եւ ի բազմապատիկ հիւանդութիւնս կարօտացաք մարդասիրին դարմանոյ ըղձացաք ելս մեր․ վասն որոյ բժշկեա զմեզ Քրիստոս որպէս մարդասէր։ Որ եկիր ի փրկութիւն մարդկան ծնընդեամբ կուսին Մարիամու․ եւ կենդանարար քո յարութեամբդ հրաւիրեցեր զմահացեալքս ի յարութիւն անմահութեան․ վասն որոյ աղաչանօք մօր քո կեցո զմեզ Փրկիչ։

ԱԳ. Համբառնամ առ քեզ Տէր զանձս իմ նայեա յիս գըթութեամբըդ քո եւ ողորմեա։ Դու ես յոյս եւ ապաւէն իմ զերծո զիս յորոգայթէ մեղաց եւ ողորմեա։ Ազատեցուցիչ իմ եւ փըրկիչ իմ ազատեա զիս յորոգայթէ մեղաց եւ ողորմեա։

ԴՁ. Զգալուստ քո Քրիստոս այսօր. յԵրուսաղէմ նոր եկեղեցի սուրբ. յաղթական երգով բարեբանեմք ‖ օրհնեալ եկեալ անուամբ Տեառն։ Որ վասն մերոյ փըրկութեան յաւանակի նըստիլ յանձն առեր. ընդ մանկունսըն բարեբանեմք օրհնեալ։ Թագաւոր երկնաւոր. զեկեղեցի քո անշարժ պահեա. եւ զերկըրպագուս անուանըդ քո պահեա ի խաղաղութեան։

ՑԱՐ. Զյարութիւն Աստուածորդւոյն. հրեշտակապետն այսօր աւետէր կանանցն ասելով. յարուցեալ է Տէրն ի գերեզմանէն։ Ընթացեալ կանանցըն խընդութեամբ. պատմէին աշակերտացն ասելով. յարուցեալ է Տէրն ի գերեզմանէն։ Վասն որոյ եւ մեք ընդ հրեշտակին գոչեսցուք զյարութիւնըն Քրիստոսի. որ փըրկեացն զմեզ ի ձեռաց մահու։

ՀԳ. Կենդանարար Աստըւած մարդասէր Հոգի. ըզժողովեալըն միաբան կան սիրով. լուսաւորեցեր հրեղէն նոքօք լեզուօք. ‖ վասն որոյ եւ մեք այսօր տօնեմք ըզգալուստ քո սուրբ։ Զուարճացան քո գալըստեամբն սուրբ առաքեալքն. կոչելով ի միասին ըզցըրուեալսն ի միմեանց բազմաձայն լեզուօք. վասն։ Հոգեւորական սուրբ մըկըրտութեամբ. զարդարեցեր նոքօք ըզտիեզերս ի զգեստըս լուսափայլս եւ նորափետուրս. վասն որոյ եւ մեք այսօր տօնեմք ըզգալուստ քո սուրբ։

ՄԾ. Ծագումըն հրաշալի որ անյայտ էր ի մէնջ. եւ

Digitized by Google

Բանըն հայրական անըմբռնելի. հուր փայլակնացեալ և ի մարմնի բնակեցաւ. անվըրնաւ պահելով զարարածս ամենայն: Տագուհըն հրաշագործ որ ի կուսէն ծագեցաւ. ճառագայթելով զարարածս ամենայն. Երկինըք ցընծայն և երկիրս ուրախանայր. եւ Քրիստոս Աստուած ընդ մարդկան շըրջեցաւ: Առ քեզ ապաւինիմք Ամենասըրբուհի. գերագոյն և հրաշալի եւ բաշխող բարութեանց. աղբիւր ես ծարաւեաց եւ հանգիստ աշխատելոց. եւ եղեր վերընկալ աստուածային Բանին:

ԽԶ. Զօրութիւն սուրբ խաչի քո Քրիստոս. որ կանգնեցեր ի փըրկութիւն աշխարհի. ‖ սա պահեսցէ ըզմեզ յամենայն փորձութենէ: Քանզի ի սմա բարձրացար Աստուած. եւ ի սմա հեղեր ըզպատուական սուրբ զարիւնըդ. սա:

Փառք Հօր և:

Եւ ըզքո միւսանգամ ըզգալուստըդ. նըշանաւ խաչի քո ցուցեր աշխարհի. սա:

Այժմ և միշտ:

Ընդ հոգւոցն արդարոց կատարելոց եւ զհոգիս ծառայից քոց ընդ սուրբըս քո հանգո մարդասէր:

ՎԵՐՋ ՁԱՅՆ

Հայր անըսկիզբն բարեխնամ մարդասէր. որ ստեղծիչդ ես հոգւոց եւ մարմնոց. յիշեա զննջեցեալսըն մեր ‖ եւ հանգո ընդ սուրբըս քո: Որդիդ միածին որ գըթածդ ես առ ամենեսեան. եւ խաչիւ եւ արեամբ գնեցեր ըզքո ժողովուրդս. յիշեա զգինս արեան քո Տէր եւ հան: Հոգիդ ճըշմարիտ. որ աղբիւրդ ես անըսպառելի. եւ լըցուցիչ ամենայն բարութեանց. յիշեա զննջեցեալսըն մեր եւ հանգո:

Digitized by Google

Խնդրեմք ի քէն թագաւոր փառաց փառաւորեալդ ի զուարթնոց. || զննջեցեալսն մեր ընկալ մարդասէր Տէր. եւ հանգո ընդ սուրբս քո։ Յորժամ գաս փառօք Հօր դատել զերկիր արդարութեան արեգակն. զննջեցեալսն։ Ի նստել քո յատենի դատաւոր ահեղ Քրիստոս փրկիչ մեր եւ յոյս. զննջեցեալսն։

Ո՛ր արարիչդ ես արարածոց հանգուցեալդ ի հրեղէն կառս. || յիշեա զհոգիս ննջեցելոց մերոց եւ հանգո ընդ սուրբս քո։ Ո՛ր երկայնամիտդ ես առ ամենեսեան. եւ ներող յանցանաց մերոց. յիշեա։

ԱԳ. ԿԻՐ. Բանն որ ընդ Հօր յէութեան. եւ համագոյ սուրբ Հոգւոյն. զպատկերն իւրական խառնեալ ընդ հողանիւթ բնութեանս. զոր զարդարեալ փառօք եդ ի դրախտին փափկութեան։ Յորում ցնծայր զուարճացեալ. անտըխրալին խնդութեամբ. քանզի զԱստուած տեսանէր միշտ խոնարհեալ ի դրախտին. յորմէ զլուսոյն ճառագայթ տպաւորէր ի յինքեան։ Վասն որոյ աղաչեմ. մայր Աստուծոյ Մարիամ. զմիածինն քո զՈրդին զի շնորհեսցէ սա աւազակին. ժառանգել վերստին մեզ զդրախտին վայելչութիւն։

ԱԳ. Քրիստոս Աստուած յոյս ապաշխարողաց. շնորհեա զթողութիւն բազում յանցանաց իմոց։ Առ քեզ բազմագութ ապաւինեալ կարդամք մի մերժեր զմեզ յողորմութենէ քումմէ։ Որպէս զաւազակն աղաղակեմ առ քեզ յիշեա եւ զիս Տէր. ի քում յարքայութեանդ։

ԴՁ. Յիսուս միածինն անմահութեանց պարգեւատուն երեւեցար ըմեզ. խափանեաց զզօրութիւն մահու։ Բղխմամբ արտասուաց Մարիամու եւ Մարթայի ընկեալ առ ոտսն Տեառն. խնդրէին

զնորոգումն եղբօրն ։ Բանի և Բանն Աստուած կենագործեաց ըզՂազարոս ի Թաղմանէ . և եկեալ արտաքս անապական ։

ՑԱՐ։ Ցորժամ եկին ի գերեզմանն իւղաբեր կանայքն և բերին ըզխունկսն ի խընկել . զանապական մարմինն ։ Ցայնժամ հրեշտակն աւետարանէր . յարեաւ Քրիստոս պատմեցէք աշակերտացն զյարութիւնն Տեառն ։ Իսկ նոքա զարհուրեալ վասն ահագին տեսլեանն . պատմեցին աշակերտացն զահագին տեսիլն ։

ՀԳ. Ի համբառնալ Բանին յերկինս և ի նըստել ընդ աջմէ Հօր . զուարճացեալ առաքելոցն երկըրպագէին . Օրհնեալ ըզՀայր զառաքող Հոգւոյն ։ Համահաւաքեալ գունդքդ սըրբոցն ի վերնատունըն խորհըրդոյ . համբարձմամբ աչաց սպասէին Հոգւոյն . Օրհնեալ ։ Ցանկարծական հընչմամբ հեղեալ կենդանարար աղբիւր լուսոյ . անմահական կենաց լուսով զարդարեալ . որք օրհնէին ըզՀայր զառաքող Հոգւոյն ։

ՄՍ. Աստուածածին մայր և կոյս . ծաղկող արեգականն արդարութեան որ լուսաւորեացն ըզմեզ . ‖ հոգեւոր երգով զքեզ բարեբանեմք և փառաւորեմք ըզմեծածին քո զՈրդին ։ Ելոյծ զօրէնըս բընութեան մարդկան . հրաշափառ քո ծընունդ . և զէութիւն բնութեանն ամբողջ պահեալ և կուսութեանդ քո ոչ խախտեցան կընիք . հոգեւոր ։ Զքեզ մորենի անկէզ . լեառըն վիմածին դուռըն փակեալ և աղբիւր կընքեալ . նախատեսացըն գուշակեալ մայր և կոյս . հոգեւոր ։

ԻՁ. Խաչի քո Քրիստոս երկըրպագեմք արարածքամենայն . որ ի փըրկութիւն մեզ կանգնեցաւ . սա եղիցի մեզ պահապան յաղթող ապրեցուցանել ըզմեզ ի պատրանաց թըշնամւոյն ։ Ի սմա բարձրացար բարձրեալդ



Digitized by Google

անիծից. որ փառաւորեալդ ես ընդ Հօր. ժողովեա զ ըզհեռացեալսըն կենսաբեր փայտիւն. ապրեցուցանել ըզմեզ ի պատրանաց Թշնամւոյն։

փառք Հօր և ։

Սովաւ լուսաւորեցան արարածք ամենայն. սմա սպասէին արգելեալքն ի մեղսամէր բանտին որ ազատեաց ըզմեզ ի պատրանաց Թշնամւոյն։

Այժմ և միշտ ։

Որ միւսանգամ գալոց ես հայրենի՝ փառօք. նորոգել զնախաստեղծին ծընունդ. յիշեա զհոգիս նընջեցելոց մերոց եւ հանգո ընդ սուրբս քո ։

Սաղմոսք ըստ յունիցն նախ քան զաւետարանն հանգստեան։

## Ս.Զ

Տէր մի՛ սրտմտութեամբ քով յանդիմաներ զիս, և մի՛ բարկութեամբ քով խրատեր զիս։

Ողորմեա ինձ Տէր, զի հիւանդ եմ ես. բժշկեա զանձն իմ, զի խռովեցան ոսկերք իմ։

Անձն իմ յոյժ խռովեցաւ, և դու Տէր մինչև յե՞րբ։

Դարձ Տէր, և փրկեա զանձն իմ, կեցո զիս Տէր ըստ ողորմութեան քում։

Զի ոչ ոք է որ ի մահու յիշէ զքեզ, կամ ի դժոխս խոստովան առնի առ քեզ։

Վաստակեցի ես ի հեծութեան իմում, լուացի զամենայն գիշեր զմահիճս իմ, և արտասուօք իմովք զանկողինս իմ թացի։

Խռովեցաւ ի սրտմտութենէ ակն իմ, մաշեցայ ես ի վերայ ամենայն թշնամեաց իմոց։

Ի բաց կացէք յինէն ամենեքեան, որք գործէք զանօրէնութիւն։

Լուաւ Տէր ձայնի լալոյ իմոյ, լուաւ Տէր աղօթից իմոց, և Տէր զխնդրուածս իմ ընկալաւ։

Ամաչեսցեն և խռովեսցին յոյժ ամենայն թշնամիք իմ, դարձցին յետս և ամաչեսցեն յոյժ վաղվաղակի և խռովեսցին։

Digitized by Google

## ԱԿ

*Բարձր առնեմ զքեզ Տէր, զի ընկալար զիս, և ոչ ուրախ արարեր զթշնամիս իմ յիս։*

*Տէր Աստուած իմ կարդացի առ քեզ և բժշկեցեր զիս. Տէր հաներ ի դժոխոց զանձն իմ. փրկեցեր զիս յայնցանէ, որ իջանեն ի գուբ։*

*Սաղմոս ասացէք Տեառն սուրբք նորա, խոստովան եղերուք յիշատակի սրբութեան նորա։*

*Բարկութիւն է ի բարկութեան նորա, և կեանք են ի կամաց նորա։*

*Ընդ երեկոյս հանգիցեն լալիք, առաւօտու եղիցի ուրախութիւն։*

*Ես ասացի ի բարեկենդանութեան իմում, թէ ոչ սասանեցայց յաւիտեան։*

*Տէր ի կամս քո ետուր գեղոյ իմոյ զօրութիւն, դարձուցեր զերեսս քո յինէն՝ և ես եղէ խռովեալ։*

*Ես առ քեզ Տէր կարդացի, առ Աստուած իմ աղաղակեցի. զի՞նչ օգուտ է քեզ յարենէ իմմէ, թէ իջանեմ ես յապականութիւն։*

*Միթէ հո՞ղ խոստովան առնիցի առ քեզ, կամ պատմեսցէ զճշմարտութիւնս քո։*

*Լուաւ ինձ Տէր և ողորմեցաւ, և Տէր եղև ինձ օգնական։*

*Դարձոյց զսուգ իմ յուրախութիւն, զերծ յինէն զքուրձ և ինձ զգեցոյց զուրախութիւն։*

*Որպէս սաղմոս ասասցեն քեզ փառք իմ, և այլ մի՛ ես զղջացայց. Տէր Աստուած իմ, յաւիտեան խոստովան եղէց քեզ։*

## ԲՁ

*Աստուած յանուան քում կեցո զիս, և ի զօրութեան քում իրաւ արա ինձ։*

*Աստուած լուր աղօթից իմոց, ունկն դիր բանից բերանոյ իմոյ։*

*Օտարք յարեան ի վերայ իմ, և հզօրք խնդրեցին զանձն իմ, և ոչ համարեցան զքեզ Աստուած առաջի իւրեանց։*

Digitized by Google

Ահա Աստուած օգնական իմ, և Տէր ընդունելի հոգւոյ իմոյ։

Ի դարձուցանել զչարն ի թշնամիս իմ, ճշմարտութեամբ քով սատակեա զնոսա։

Ես կամաք իմովք պատարագս մատուցից քեզ, խոստովան եղէց անուան քում Տէր, զի բարի է։

Յամենայն նեղութենէ իմմէ փրկեցեր զիս, և ի թշնամիս իմ ետես ակն իմ։

## ԲԿ

Աստուած ողորմեա մեզ և օրհնեա զմեզ, երևեցո զերեսս քո ի մեզ և ողորմեա մեզ։

Ճանաչել յերկրի զճանապարհս քո, յազգինս ամենայն զփրկութիւնս քո։

Խոստովան եղիցին առ քեզ ժողովուրդք Աստուած, խոստովան եղիցին առ քեզ ժողովուրդք ամենայն։

Ուրախ եղիցին և ցնծասցեն ազինք, զի դու դատիս զժողովուրդս յուղղութիւն, և ազգաց երկրի դու առաջնորդես։

Խոստովան եղիցին առ քեզ ժողովուրդք Աստուած, գոհասցին զքէն ժողովուրդք ամենայն։

Երկիր ետ զպտուղ իւր, և օրհնեաց զմեզ Աստուած, Աստուած մեր։

Աստուած մեր օրհնեսցէ զմեզ, և ի նմանէ երկիցեն ամենայն ազգք երկրի։

## ԳՁ

Հաճեցար Տէր ընդ երկիր քո, և դարձուցեր զգերութիւն Յակովբայ։

Թողեր զանիրաւութիւն ժողովրդեան քո, ծածկեցեր զամենայն մեղս նոցա։

Լռեցուցեր զամենայն սրտմտութիւնս քո, դարձար ի բարկութենէ սրտմտութեան քո։

Դարձ առ մեզ Աստուած փրկիչ մեր, և դարձո զսրտմտութիւնս քո ի մէնջ։

Մի՛ յաւիտեան բարկանար մեզ Տէր, և մի՛ ձգեր զբարկութիւն քո ազգէ մինչև յազգ։

Աստուած դու դարձեալ կեցուսցես զմեզ, ժողովուրդ քո ուրախ եղիցի ի քեզ։

Ցոյց մեզ Տէր զողորմութիւնս քո, և զփրկութիւնս քո տուր մեզ։

Լուայց զինչ խօսի Տէր Աստուած մեր. խօսեսցի զխաղաղութիւն ժողովրդեան իւրոյ առ սուրբս իւր՝ և առ այնոսիկ որ դարձեալ են առ Նա սրտիւք։

Սակայն մերձ է առ երկիւղածս իւր փրկութիւն Նորա, բնակել փառաց Նորա յերկրի մերում։

Ողորմութիւն և ճշմարտութիւն պատահեսցին, արդարութիւն և խաղաղութիւն համբուրեսցին։

Ճշմարտութիւն յերկրէ բուսաւ, արդարութիւն յերկնից երևեցաւ։

Տէր տացէ զքաղցրութիւն և երկիր մեր տացէ զպտուղ իւր. արդարութիւն առաջի Նորա գնասցէ, դիցէ ի ճանապարհի զգնացս իւր։

## ՂԱ

Տէր լուր աղօթից իմոց, աղաղակ իմ առ քեզ եկեսցէ. մի դարձուցաներ զերեսս քո յինէն։

Յաւուր նեղութեան իմոյ խոնարհեցո առ իս զունկն քո, յորում աւուր կարդամ առ քեզ՝ վաղվաղակի լուր ինձ։

Սպառեցան որպէս ծուխ աւուրք իմ, և ոսկերք իմ որպէս խռիւ չորացան։

Հարաւ որպէս խոտ և ցամաքեաց սիրտ իմ, մոռացայ ուտել զհաց իմ ի ձայնէ հեծութեան իմոյ։

Կցեցաւ ոսկր իմ ի մարմին իմ, նմանեցայ ես հաւալըսան յանապատի։

Եղէ ես որպէս բու յաւերակի, տքնեցայ և եղէ ես որպէս ճնճղուկ միայն ի տանիս։

Նախատեցին զիս Թշնամիք իմ զօրհանապազ, և գովիչք իմ ինև երդնուին։

Ջմոխիր որպէս հաց կերայ, և զըմպելի իմ արտասուօք խառնեցի։

Յերեսաց բարկութեան սրտմտութեան քո, զի դու բարձրացուցեր և խոնարհեցուցեր զիս։

Աւուրք իմ որպէս հովանի անցին, և ես որպէս խոտ ցամաքեցայ։

Դու Տէր յաւիտեան կաս, և յիշատակ քո ազգէ մինչև յազգ։

Դու յարուցեալ գթասցիս ի վերայ Սիոնի. ժամանակ գթալոյ նորա հասեալ է ժամ։

## ԴՁ

Մերձեսցին խնդրուածք իմ առաջի քո Տէր, ըստ բանի քում իմաստուն արա զիս։

Մտցեն աղօթք իմ առաջի քո Տէր, և բանիւ քով փրկեա զիս։

Բղխեսցեն շրթունք իմ զօրհնութիւնս քո, յորժամ ուսուսցես ինձ զարդարութիւնս քո։

Խօսեսցի լեզու իմ զբանս քո, զի ամենայն պատուիրանք քո արդարութեամբ են։

Եղիցի ձեռն քո ի կեցուցանել զիս, զի զպատուիրանս քո ընտրեցի։

Ցանկացայ փրկութեան քում Տէր, և օրէնք քո խօսք իմ էին։

Կեցցէ անձն իմ, օրհնեսցէ զքեզ, և իրաւունք քո օգնեսցեն ինձ։

Մոլորեցայ ես որպէս զոչխար կորուսեալ, խնդրեա զծառայս քո, զի զպատուիրանս քո ես ոչ մոռացայ։

## ԴԿ

Տէր լուր աղօթից իմոց, ունկն դիր խնդրուածոց իմոց ճշմարտութեամբ քով։

Լուր ինձ արդարութեամբ քով, և մի մտաներ ի դատաստան ընդ ծառայի քում, զի ոչ արդարանայ առաջի քո ամենայն կենդանի։

Հալածեաց թշնամին զանձն իմ, խոնարհ արար յերկիր զկեանս իմ. և նստոյց զիս ի խաւարի որպէս մեռեալ յաւիտենից։

Ձանձրացաւ յիս հոգի իմ, և սիրտ իմ խռովեցաւ յիս։

Ցիշեցի զաւուրսն զառաջինս, խորհեցայ յամենայն ի գործս քո. յարարածս ձեռաց քոց խորհեցայ, և համբարձի առ քեզ զձեռս իմ։

Անձն իմ որպէս երկիր ծարաւի է առ քեզ. վաղվաղակի լուր ինձ Տէր, զի նուաղեաց յինէն հոգի իմ։

Մի՛ դարձուցաներ զերեսս քո յինէն, նմանիցեմ այնոցիկ որ իջանեն ի գուբ։

Լսելի արա ինձ առաւօտուց զողորմութիւնս քո, զի ես ի քեզ Տէր յուսացայ։

Ցոյց ինձ ճանապարհ յոր գնացից, զի առ քեզ Տէր համբարձի զանձն իմ։

Փրկեա զիս ի թշնամեաց իմոց Տէր, զի զքեզ ապաւէն ինձ արարի։

Ուսո ինձ առնել զկամս քո, զի դու ես Աստուած իմ։

Հոգի քո բարի առաջնորդեսցէ ինձ ի յերկիր ուղիղ։

Վասն անուան քո Տէր կեցուսցես զիս արդարութեամբ քով, հանցես ի նեղութենէ զանձն իմ։

Ողորմութեամբ քով սատակեսցես զթշնամիս իմ. և կորուսցես զամենայն նեղիչս անձին իմոյ, զի ես ծառայ քո եմ։

Զինի աղօթոյս ընթերցեալ լինի առաւօտուն բայց յայնժամ։

---

# ԱՒԵՏԱՐԱՆՔ ՀԱՆԳՍՏԵԱՆ

## ԲԿ. ԳԿ.

### Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի. ԺԳ. 36։

### Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի

Յայնժամ թողեալ (Յիսուսի) զժողովուրդսն եկն ի տուն. մատեան առ նա աշակերտքն և ասեն. մեկնեա մեզ զառակ որոմանցն ագարակին։ Նա պատասխանի ետ և ասէ ցնոսա. որ սերմանէ սերմն բարի՝ է որդի մարդոյ, և ագարակն աշխարհս է. սերմն բարի նոքա են, որ որդիքն արքայութեան են. իսկ որոմնն որդիք չարին են. և թշնամին որ վարեաց զայն՝ սատանայ է, և հունձքն կատարած աշխարհիս է, և հնձողքն հրեշտակք են։ Որպէս ժողովի որոմնն և ի հուր այրի, այնպէս եղիցի ի կատարածի աշխարհիս. առաքեսցէ որդի մարդոյ զհրեշտակս իւր, և ժողովեսցեն յարքայութենէ նորա զամենայն գայթակղութիւնս և զայնոսիկ, որք գործեն զանօրէնութիւն, և արկցեն զնոսա ի հնոց հրոյ. անդ եղիցի լալ և կրճել

ատամանց։ Յայնժամ արդարքն ծագեսցեն իբրեւ զարե-
գակն յարքայութեան երկնից. որ ունիցի ականջս լսելոյ՝
լուիցէ։ Դարձեալ նման է արքայութիւն երկնից գանձի
ծածկելոյ յագարակի, զոր գտեալ մարդոյ թաքոյց. եւ ի
խնդութենէ անտի երթայ վաճառէ զամենայն ինչ զոր
ունի, եւ գնէ զագարակն զայն։ Դարձեալ նման է ար-
քայութիւն երկնից առն վաճառականի, որ խնդրիցէ մար-
գարիտս գեղեցիկս. եւ գտեալ մի պատուական մարգա-
րիտ՝ երթեալ վաճառեաց զամենայն զոր ինչ ունէր, եւ
գնեաց զայն մարգարիտ։ Դարձեալ նման է արքայու-
թիւն երկնից ուռկանի արկելոյ ի ծով, եւ յամենայն ազ-
գաց ժողովելոյ. զոր՝ իբրեւ լցաւ՝ հանեալ ի ցամաք, եւ
նստեալ ժողովեցին զբարի բարին յամանս, եւ զխոտանն
ի բաց ընկեցին։ Այնպէս եղիցի ի կատարածի աշխար-
հիս. ելցեն հրեշտակք եւ մեկնեսցեն զչարս ի միջոյ ար-
դարոց, եւ արկցեն զնոսա ի հնոց հրոյն. անդ եղիցի լալ
եւ կրճել ատամանց։ Ասէ ցնոսա Յիսուս. իմացարո՞ւք զայս
ամենայն։ Ասեն ցնա. այո Տէր։ Եւ նա ասէ ցնոսա.
վասն այսորիկ ամենայն դպիր աշակերտեալ արքայու-
թեան երկնից, նման է առն տանուտեառն՝ որ հանէ ի
գանձէ իւրմէ զնոր եւ զհին։ 52։

## ԲՋ. ԴՋ.

### Սրբոյ Աւետարանին որ ըստ Մարկոսի. Դ. 26։

### Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ ասէր. այսպէս է արքայութիւն Աստուծոյ. որպէս
զի այր մի արկանիցէ սերմանիս յերկիր, եւ ննջիցէ եւ
յառնիցէ զցայգ եւ զցերեկ. եւ սերմանիքն բուսանիցին եւ
աճիցեն, եւ նա ոչ գիտէ՝ թէ երկիրն ինքնին բերէ զպը-
տուղ. նախ զխոտն, եւ ապա զհասկն, եւ ապա ցորեան
ատոք ի հասկին. այլ յորժամ տայցէ զպտուղն, վաղ-
վաղակի առաքի մանգաղ, զի հասեալ են հունձք։ Եւ
ասէր. ո՞ւմ նմանեցուսցուք զարքայութիւնն Աստուծոյ,
կամ որո՞վ առակաւ առակեսցուք զնա։ Որպէս հատն մա-
նանխոյ՝ որ յորժամ սերմանիցի յերկրի, փոքրագոյն է
քան զամենայն սերմանիս՝ որ են յերկրի, եւ յորժամ
սերմանիցի, բուսանի եւ լինի մեծ քան զամենայն բան-

Digitized by Google

ջար և արձակէ ոստս մեծամեծս, մինչև բաւական լինել ընդ հովանեաւ նորա թռչնոց երկնից բնակել։ Եւ այնպիսի առակօք խօսէր ընդ նոսա զբանն, որպէս կարող լինէին լսել. և առանց առակի ոչ ինչ խօսէր ընդ նոսա, բայց առանձինն աշակերտացն իւրոց մեկնէր զամենայն։ 34։

## ԱԿ. ԳԿ.

### Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու. ԺԲ. 32։

### Տէրն մեր Յիսուս Քրիստոս ասէ.

Մի՛ երկնչիր հօտ փոքրիկ, զի հաճեցաւ հայր ձեր տալ ձեզ զարքայութիւն։ Վաճառեցէք զինչս ձեր, և տուք ողորմութիւն. և արարէք ձեզ քսակս առանց հնանալոյ, գանձ անպակաս յերկինս. ուր ոչ գող մերձենայ, և ոչ ցեց ապականէ։ Զի ուր գանձն ձեր է, անդ և սիրտք ձեր եղիցին։ Եղիցին գօտիք ձեր պնդեալ ընդ մէջս, և ճրագունք լուցեալք։ Եւ դուք նմանողք մարդկան որ ակն ունիցին տեառն իւրեանց՝ թէ երբ դառնայցէ ի հարսանեաց, զի յորժամ գայցէ և բախիցէ, վաղվաղակի բանայցեն նմա։ Երանի իցէ ծառայիցն այնոցիկ, զորս եկեալ տէրն գտցէ արթունս. ամէն ասեմ ձեզ, զի գօտի ընդ մէջ ածցէ, և բազմեցուսցէ զնոսա, և անցեալ պաշտիցէ զնոսա. և եթէ յերկրորդ կամ յերրորդ պահու եկեսցէ և գտցէ այնպէս, երանելի են ծառայքն այնոքիկ։ Բայց զայն գիտասջիք, եթէ գիտէր տանուտէրն յորում ժամու գող գայ, չտայր թոյլ ական հատանել ի տան իւրում։ Եւ դուք եղերուք պատրաստք, զի յորում ժամու ոչ կարծիցէք՝ գայ որդի մարդոյ։ Ասէ Պետրոս. Տէր, առ մե՞զ ասացեր զառակդ զայդ՝ թէ առ ամենեսեան։ Եւ ասէ Տէր. ո՞վ իցէ հաւատարիմ տնտես և իմաստուն, զոր կացոյց տէր իւր ի վերայ գերդաստանի իւրոյ տալ ի ժամու զկերակուրս։ Երանի իցէ ծառային այնմիկ՝ զոր եկեալ տէր իւր գտանիցէ արարեալ այնպէս։ Արդարեւ ասեմ ձեզ, զի ի վերայ ամենայն ընչից իւրոց կացուսցէ զնա։ Ապա թէ ասիցէ ծառայն այն ի սրտի իւրում. յամէ տէր իմ ի գալ, և սկսանիցի հարկանել զծառայսն և զաղախնայսն, ուտել և ըմպել և արբենալ, եկեսցէ տէր ծառային այնորիկ յաւուր յորում ակն ոչ ունիցի, և ի

Digitized by Google

ժամու յորում ոչ գիտիցէ. ընդ մէջ կտրեսցէ զնա, և զմասն նորա ընդ անհաւատս դիցէ։ Եւ ծառայ որ գիտիցէ զկամս տեառն իւրոյ և ոչ պատրաստիցէ ըստ կամաց նորա, արբցէ գան բազում։ Եւ որ ոչն գիտիցէ՝ և արժանի գանի ինչ գործիցէ, արբցէ գան սակաւ։ Ամենայնի որում շատ տուաւ՝ շատ խնդրեսցի ի նմանէ. և որում բազում աւանդեցաւ՝ առաւել ևս պահանջեսցեն ի նմանէ։ 48։

## ԱՋ. ԳՋ.

### Սրբոյ Աւետարանիս որ ըստ Յովհաննու. Ե. 19։

### Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Պատասխանի ետ (Յիսուս) և ասէ ցնոսա. ամէն ամէն ասեմ ձեզ. ոչ կարէ որդի մարդոյ առնել յանձնէ և ոչ ինչ, եթէ ոչ տեսանիցէ զՀայրն զի առնէ. զի զոր նայն առնէ, զնոյն և Որդին նմին նման գործէ։ Զի Հայր սիրէ զՈրդի, և զամենայն ինչ ցուցանէ նմա զոր ինքն առնէ. և մեծամեծս ևս քան զսոյնս ցուցանէ նմա զգործս, ընդ որ դուքդ զարմանայք։ Զի որպէս Հայր յարուցանէ զմեռեալս և կենդանի առնէ, նոյնպէս Որդի զորս կամի կենդանի առնէ։ Եւ ոչ եթէ Հայր դատի զոք, այլ զամենայն դատաստանն ետ Որդւոյ իւրոյ. զի ամենեքեան պատուեսցեն զՈրդի, որպէս պատուեն զՀայրն. որ ոչ պատուէ զՈրդին, ոչ պատուէ զՀայր զառաքիչն նորա։ Ամէն ամէն ասեմ ձեզ, զի որ զբանն իմ լսէ, և հաւատայ այնմ որ առաքեացն զիս, ընդունի զկեանսն յաւիտենականս. և ի դատաստան ոչ մտանէ, այլ փոխեցաւ ի մահուանէ ի կեանս։ Ամէն ամէն ասեմ ձեզ, զի գայ ժամանակ՝ և արդէն իսկ է, յորժամ մեռեալք լսիցեն ձայնի Որդւոյն Աստուծոյ, և որք լսիցենն՝ կեցցեն։ Զի որպէս Հայր ունի կեանս յանձին իւրում, նոյնպէս ետ և Որդւոյ ունել կեանս յանձին իւրում։ Եւ իշխանութիւն ետ նմա դատաստան առնել. և զի որդի մարդոյ է, ընդ այն զի՞ զարմանայք։ Զի եկեսցէ ժամանակ՝ յորում ամենեքին որ ի գերեզմանս կայցեն, լուիցեն ձայնի նորա և ելցեն արտաքս. որոց բարիս գործեալ իցէ՝ ի յարութիւն կենաց, և որոց զչար արարեալ՝ ի յարութիւն դատաստանաց։ Ոչ կարեմ ես

Digitized by Google

յանձնէ առնել և ոչ ինչ. այլ որպէս լսեմ դատիմ, և դատաստանն իմ արդար է. զի ոչ խնդրեմ զկամս իմ, այլ զկամս այնորիկ որ առաքեացն զիս։ 30։

# ԱՒԵՏԱՐԱՆՔ ՏԱՃԱՐԻ

## ԲԿ. ԳԿ.

### Սրբոյ Աւետարանին որ ըստ Մատթէոսի. ԻԴ. 1։

### Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ ելեալ արտաքս (Յիսուս) ի տաճարէն՝ գնայր, և մատեան աշակերտքն ցուցանել նմա զշինուածս տաճարին։ Եւ նա պատասխանի ետ և ասէ ցնոսա. տեսանէ՞ք զայդ ամենայն. ամէն ասեմ ձեզ, ոչ մնասցէ այդր քար ի քարի վերայ որ ոչ քակտեսցի։ Եւ մինչ դեռ նստէր ի լերինն ձիթենեաց, մատեան առ նա աշակերտքն առանձինն և ասեն. ասա մեզ՝ ե՞րբ լինիցի այդ, և կամ զի՞նչ նշան իցէ քոյոյ գալստեանն և վախճանի աշխարհիս։ Պատասխանի ետ Յիսուս և ասէ ցնոսա. զգոյշ լերուք՝ գուցէ ոք զձեզ խաբիցէ. զի բազումք գայցեն յանուն իմ, և ասիցեն՝ թէ ես եմ Քրիստոսն, և զբազումս մոլորեցուցանիցեն։ Լսելոց էք պատերազմունս և համբաւս պատերազմաց. զգոյշ լերուք՝ մի խռովեսջիք, զի պարտ է լինել այնմ ամենայնի, այլ չև է կատարած։ Յարիցէ ազգ յազգի վերայ, և թագաւորութիւն ի թագաւորութեան. և եղիցին սովք և սրածութիւնք և սասանութիւնք ի տեղիս տեղիս. սակայն և այն ամենայն՝ սկիզբն է երկանց։ Յայնժամ մատնեսցեն զձեզ ի նեղութիւնս, և սպանանիցեն զձեզ. և եղիջիք ատեցեալք յամենայն ազգաց վասն անուան իմոյ։ Եւ յայնժամ գայթակղեսցին բազումք, և զմիմեանս մատնեսցեն և ատեսցեն զմիմեանս. և բազում սուտ մարգարէք յարիցեն, և զբազումս մոլորեցուսցեն։ Եւ վասն բազմանալոյ անօրէնութեանն՝ ցամաքեսցի սէր բազմաց. բայց որ համբերեսցէ ի սպառ, նա կեցցէ։ Եւ քարոզեսցի աւետարանս արքայութեան ընդ ամենայն տիեզերս՝ ի վկայութիւն ամենայն հեթանոսաց, և ապա

Digitized by Google

եկեսցէ կատարած։ Արդ յորժամ տեսանիցէք զպղծութիւն աւերածոյն, որ ասացեալն է ի ձեռն Դանիէլի մարգարէի, զի կայցէ ի տեղւոջն սրբութեան, որ ընթեռնուն՝ ի միտ առցէ։ Յայնժամ որ ի Հրէաստանի իցեն՝ փախիցեն ի լերինս, և որ ի տանիս կայցէ, մի՛ իջցէ առնուլ ինչ ի տանէ իւրմէ. և որ յանդի իցէ՝ մի՛ դարձցի յետս առնուլ զձորձս իւր։ Բայց վա՜յ իցէ յղեաց և ստնտուաց յաւուրսն յայնոսիկ։ Յաղօթս կացէք՝ զի մի՛ լինիցի փախուստն ձեր ձմերանի և մի՛ ի շաբաթու։ Զի եղիցի յայնժամ նեղութիւն մեծ, որպիսի ոչ եղև ի սկզբանէ արարածոց աշխարհի մինչև ցայժմ, և ոչ այլ լիցի։ Եւ եթէ ոչ կարճէին աւուրքն այնոքիկ, ոչ ապրէր ամենայն մարմին. բայց վասն ընտրելոցն կարճեսցին աւուրքն այնոքիկ։ Յայնժամ թէ ոք ասիցէ ձեզ՝ ահաւասիկ աստ է Քրիստոսն կամ անդ, մի՛ հաւատայցէք։ Զի յարիցեն սուտ քրիստոսք և սուտ մարգարէք, և տայցեն նշանս մեծամեծս և արուեստս, մինչ մոլորեցուցանել՝ թէ հնար ինչ իցէ՝ և զընտրեալսն. ահա յառաջագոյն ասացի ձեզ։ Ապա թէ ասիցեն ձեզ, ահաւանիկ յանապատի է, մի՛ ելանիցէք. և թէ ահա յշտեմարանս է, մի՛ հաւատայցէք։ Զի որպէս փայլակն՝ որ ելանէ յարևելից և երևի մինչև յարևմուտս, այնպէս եղիցի գալուստն որդւոյ մարդոյ։ Զի ուր գէշն իցէ, անդր ժողովեսցին արծուիք։ Վաղվաղակի յետ նեղութեան աւուրցն այնոցիկ արեգակն խաւարեսցի, և լուսին ոչ տացէ զլոյս իւր, և աստեղք անկցին յերկնից և զօրութիւնք երկնից շարժեսցին։ Եւ ապա երևեսցի նշան որդւոյ մարդոյ յերկինս, և յայնժամ կոծեսցին ամենայն ազգք երկրի, և տեսցեն զորդի մարդոյ եկեալ ի վերայ ամպոց երկնից զօրութեամբ և փառօք բազմօք։ Եւ առաքեսցէ զհրեշտակս իւր փողով մեծաւ, և ժողովեսցեն զընտրեալս նորա ի չորից հողմոց՝ ի ծագաց երկնից մինչև ի ծագս նոցա։ Ի թզենւոյ անտի ուսարուք զառակն. զի յորժամ նորա ոստքն կակղասցին և տերևն ցցուիցի, գիտէք թէ մերձ է ամառն։ Նոյնպէս և դուք՝ յորժամ տեսանիցէք զայս ամենայն, գիտասջիք թէ մերձ է ի դուրս։ Ամէն ասեմ ձեզ՝ եթէ ոչ անցցէ ազգս այս, մինչև այս ամենայն եղիցի։ Երկինք և երկիր անցցեն, և բանք իմ մի՛ անցցեն։ Բայց վասն աւուրն այնորիկ և ժամու՝ ոչ ոք գիտէ, ոչ հրեշտակք

երկնից և ոչ Որդի, բայց միայն Հայր։ Այլ որպէս աւուրքն Նոյի, այնպէս եղիցի գալուստն որդւոյ մարդոյ։ Զի որպէս էին յաւուրսն որ յառաջ քան զջրհեղեղն, ուտէին և ըմպէին, կանայս առնէին և արանց լինէին մինչև յօրն՝ յորում եմուտ Նոյ ի տապանն, և ոչ գիտացին՝ մինչև եկն ջրհեղեղն և եբարձ զամենեսին, այնպէս եղիցի և գալուստն որդւոյ մարդոյ։ Յայնժամ թէ իցեն երկու յագարակի, մին առնուցու և միւսն թողուցու. և եթէ երկու աղայցեն ի մի երկանս, մին առնուցու և միւսն թողուցու։ Արթուն կացէք՝ զի ոչ գիտէք յորում ժամու Տէրն ձեր գայ։ Զայն գիտասջիք. եթէ գիտէր տանուտէր՝ յորում պահու գող գայ, սկէր՝ և ոչ տայր ական հատանել զտանն իւրոյ։ Վասն այսորիկ և դուք եղերուք պատրաստք, զի յորում ժամու ոչ ակն ունիցիք՝ գայ որդի մարդոյ։ Իսկ ո՞վ իցէ հաւատարիմ ծառայ և իմաստուն, զոր կացոյց տէր իւր ի վերայ ծառայից իւրոց՝ տալ նոցա կերակուր ի ժամու։ Երանի է ծառային այնմիկ՝ զոր եկեալ տէրն գտանիցէ արարեալ այնպէս. ամէն ասեմ ձեզ, զի ի վերայ ամենայն ընչից իւրոց կացուսցէ զնա։ Ապա թէ ասիցէ ծառայն չար ի սրտի իւրում, տէր իմ յամէ գալ, և սկսանիցի հարկանել զծառայակիցս իւր, ուտիցէ և ըմպիցէ ընդ արբեցողս, գայցէ տէր ծառային այնորիկ՝ յաւուր յորում ոչ ակն ունիցի, և ի ժամու յորում ոչ գիտիցէ. և կտրեսցէ զնա ընդ մէջ, և զբաժին նորա ընդ կեղծաւորս դիցէ. անդ եղիցի լալ և կրճտել ատամանց։ 51։

## ԲՁ. ԴՁ.

### Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մարկոսի. ԺԳ. 1։

### Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի

Եւ յելանելն (նորա) ի տաճարէ անտի, ասէ ցնա մի յաշակերտացն նորա. վարդապետ, տես որպիսի են քարինքս և որպիսի շինուածք։ Պատասխանի ետ նմա Յիսուս և ասէ. տեսանե՞ս զայդ ամենայն շինուածս, ամէն ասեմ ձեզ՝ եթէ ոչ թողցի այդր քար ի քարի վերայ որ ոչ քակտեսցի։ Եւ մինչ նստէր նա ի լերինն ձիթենեաց յանդիման տաճարին, հարցանէին ցնա առանձինն՝ Պե-

տրոս և Յակոբոս և Յովհաննէս և Անդրէաս. ասա մեզ՝ ե՞րբ լինիցի այդ, և զի՞նչ նշան է՝ յորժամ կատարելոց իցէ այդ ամենայն։ Պատասխանի ետ Յիսուս և ասէ ցնոսա. զգոյշ կացէք, մի՛ ոք զձեզ խաբեսցէ. զի բազումք եկեսցեն յանուն իմ, և ասիցեն՝ թէ ես եմ Քրիստոսն, և զբազումս մոլորեցուսցեն։ Այլ յորժամ լսիցէք պատերազմունս, և համբաւս պատերազմաց՝ մի՛ խռովիցիք, զի պարտ է լինել. բայց չև է կատարած։ Զի յարիցէ ազգ յազգի վերայ, և թագաւորութիւն ի թագաւորութեան վերայ. և եղիցին շարժմունք ի տեղիս տեղիս, սովք և սրածութիւնք և խռովութիւնք. այլ այն ամենայն սկիզբն է երկանց։ Եւ զձեզ իսկ մատնեսցեն յատեանս, և ի ժողովուրդս տանջիցիք, և առաջի դատաւորաց և թագաւորաց կայցէք վասն իմ, ի վկայութիւն նոցա և ամենայն հեթանոսաց. բայց նախ պարտ է աւետարանիս քարոզել։ Այլ յորժամ տանիցին զձեզ մատնել, մի՛ յառաջագոյն հոգայցէք, և մի՛ զմտաւ ածիցէք թէ զինչ խօսիցիք. այլ որ ինչ տացի ձեզ ի ժամուն յայնմիկ՝ զայն խօսիցիք. զի ոչ դուք էք որ խօսիցիքն՝ այլ Հոգին սուրբ։ Մատնեսցէ եղբայր զեղբայր ի մահ, և հայր՝ զորդի. և յարիցեն որդիք ի վերայ հարց՝ և սպանանիցեն զնոսա. և եղիջիք ատեցեալք յամենեցունց վասն անուան իմոյ. այլ որ համբերեսցէն ի սպառ՝ նա կեցցէ։ Եւ յորժամ տեսանիցէք զպղծութիւն աւերածին՝ զի կայցէ ի տեղւոջ ուր չիցէ արժան. որ ընթեռնուն ի միտ առցէ։ Յայնժամ որ ի Հրէաստանի իցեն՝ փախիցեն ի լերինս. և որ ի վերայ տանեացն իցէ՝ մի՛ իջցէ ի տուն, և մի՛ մտցէ բառնալ ինչ ի տանէ իւրմէ. և որ յագարակին իցէ՝ մի՛ դարձցի յետս առնուլ զձորձս իւր։ Բայց վա՜յ իցէ յղեաց և ստնտուաց յաւուրսն յայնոսիկ։ Յաղօթս կացէք՝ զի մի՛ ձմերայնի լինիցի այն։ Եղիցին աւուրքն այնոքիկ նեղութեանց, որպիսի ոչ եղեն երբեք այնպիսիք ի սկզբանէ արարածոց մինչև ցայժմ, և մի՛ այլ լիցին։ Եւ եթէ ոչ էր կարճեալ Աստուծոյ զաւուրսն զայնոսիկ՝ վասն ընտրելոց իւրոց, ոչ ապրէր ամենայն մարմին. այլ վասն ընտրելոցն զորս ընտրեաց՝ կարճեաց զաւուրսն զայնոսիկ։ Յայնժամ եթէ ոք ասիցէ ձեզ՝ եթէ ահաւասիկ է Քրիստոսն կամ աւանիկ, մի՛ հաւատայցէք։ Զի յարիցեն սուտ քրիստոսք և սուտ մարգարէք, և տացեն նշանս և

Digitized by Google

արուեստ՝ առ ի մոլորեցուցանելոյ եթէ հնար ինչ իցէ և զընտրեալսն։ Բայց դուք զգոյշ եղերուք, ահաւասիկ յառաջագոյն ասացի ձեզ զամենայն։ Այլ յաւուրսն յայնոսիկ յետ նեղութեանն այնորիկ՝ արեգակն խաւարեսցի, և լուսին ոչ տացէ զլոյս իւր. և աստեղք յերկնից թօթափեսցին, և զօրութիւնք յերկինս՝ շարժեսցին։ Եւ յայնժամ տեսցեն զորդի մարդոյ եկեալ ամպովք՝ զօրութեամբ և փառօք բազմօք։ Եւ յայնժամ առաքեսցէ զհրեշտակս իւր, և ժողովեսցէ զընտրեալս իւր ի չորից հողմոց՝ ի ծագաց երկրի մինչև ի ծագս երկնից։ Բայց դուք ի թզենւոյ անտի ուսջիք զառակն. յորժամ տակաւ ոստքն նորա կակղանայցեն, և տերև արձակիցի ի նմա, գիտէք թէ մերձ է ամառն. Նոյնպէս և դուք յորժամ տեսանիցէք զայս ամենայն եղեալ, գիտասջիք թէ մերձ է առ դուրս։ Ամէն ասեմ ձեզ, թէ ոչ անցցէ ազգս այս, մինչև այս ամենայն եղիցի։ Երկինք և երկիր անցցեն, և բանք իմ ոչ անցանիցեն։ Այլ վասն աւուրն այնորիկ և ժամու ոչ ոք գիտէ, ոչ հրեշտակք յերկինս և ոչ Որդի, բայց միայն Հայր։ Զգոյշ եղերուք, սկեցէք և կացէք յաղօթս. զի ոչ գիտէք երբ ժամանակն իցէ։ Որպէս այր մի գնացեալ ի տար աշխարհ, թողուցու զտուն իւր, և տացէ ծառայից իւրոց իշխանութիւն, և իւրաքանչիւր զգործ իւր. և դռնապանին պատուէր տայցէ՝ զի արթուն լինիցի։ Արդ արթուն կացէք, զի ոչ գիտէք երբ տէր տանն գայցէ, յերեկորեայ, եթէ ի մէջ գիշերի, եթէ ի հաւախօսի, եթէ ընդ առաւօտս. գուցէ եկեալ յանկարծակի՝ գտանիցէ զձեզ ի քուն։ Բայց զոր ձեզդ ասեմ, ամենեցուն ասեմ՝ արթուն կացէք։ 37։

## ԱԿ. ԳԿ.

### Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու. ԻԱ. 5։

### Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ յասել ոմանց զտաճարէն, թէ գեղեցիկ վիմօք և աշտարակօք զարդարեալ է, ասէ. զայդ ամենայն զոր տեսանէք, եկեսցեն աւուրք՝ յորս ոչ թողցի այդր քար ի քարի վերայ, որ ոչ քակտեսցի։ Հարցին ցնա և ասեն. վարդապետ, ե՞րբ լինիցի այդ, և զի՞նչ նշան իցէ՝ յորժամ

Digitized by Google

այդ լինելոց իցէ։ Եւ նա ասէ. զգոյշ կացէք, մի՛ խաբիցիք. զի բազումք գայցեն յանուն իմ, և ասիցեն թէ ես եմ, և մերձեցաւ ժամանակ. մի՛ երթայցէք զկնի նոցա։ Եւ յորժամ լսիցէք պատերազմունս և խռովութիւնս՝ մի՛ զարհուրիցիք, զի պարտ է նախ այնմ լինել, այլ ոչ առ ժամայնն կատարած։ Յայնժամ ասէ ցնոսա. յարիցէ ազգ յազգի վերայ, և թագաւորութիւն ի թագաւորութեան վերայ. և շարժմունք մեծամեծք, և ի տեղիս տեղիս սովք և սրածութիւնք եղիցին, արհաւիրք և նշանք մեծամեծք յերկնից։ Բայց յառաջ քան զայս ամենայն, մխեսցեն ըզձեռս իւրեանց ի ձեզ և հալածեսցեն. մատնեսցեն ի ժողովուրդս և ի բանտս, և տանիցին առաջի դատաւորաց և թագաւորաց վասն անուան իմոյ. և լինիցի ձեզ այն ի վկայութիւն։ Արդ դիք ի սիրտս ձեր, մի՛ յառաջագոյն կրթել տալոյ պատասխանի. զի ես տաց ձեզ բերան և իմաստութիւն, որում ոչ կարիցեն կալ հակառակ կամ տալ պատասխանի ամենայն հակառակորդքն ձեր։ Մատնեսջիք և ի ծնողաց և յեղբարց և յազգականաց և ի բարեկամաց, և սպանանիցեն ի ձէնջ. և եղիջիք ատեցեալք յամենեցունց վասն անուան իմոյ. և մազ մի ի գլխոյ ձերմէ ոչ կորիցէ. և համբերութեամբ ձերով ստասջիք զոգիս ձեր։ Այլ յորժամ տեսանիցէք շուրջ պատեալ զօրօք զԵրուսաղէմ, յայնժամ գիտասջիք թէ մերձ է աւեր նորա։ Յայնժամ որ ի Հրէաստանի իցեն՝ փախիցեն ի լերինս, և որ ի միջի նորա իցեն՝ խուսեսցեն, և որ ի գաւառս իցեն՝ մի՛ մտցեն ի նա. զի աւուրք վրէժխնդրութեան են այնոքիկ, առ ի կատարելոյ ամենայն գրելոց։ Բայց վայ իցէ յղեաց և ստնտուաց յաւուրսն յայնոսիկ. զի եղիցի տագնապ մեծ ի վերայ երկրի, և բարկութիւն ժողովրդեանն այնմիկ։ Եւ անկցին ի սուր սուսերի, և գերեսցին յամենայն հեթանոսաց. և Երուսաղէմ եղիցի կոխան յազգաց, մինչև կատարեսցին ժամանակք հեթանոսաց։ Եւ եղիցին նշանք յարեգակն և ի լուսին և յաստեղս, և յերկրի տագնապ հեթանոսաց ի յահեղ բարբառոյ իբրև ծովու և խռովութեան, յելանելոյ ոգւոց մարդկան յերկիւղէ՝ և ի կարծեաց եկելոց ի վերայ տիեզերաց. զի զօրութիւնք երկնից շարժեսցին։ Եւ յայնժամ տեսցեն զորդի մարդոյ եկեալ ամպովք զօրութեամբ և փառօք բազմօք։ Եւ յորժամ սկսանիցի այս լինել, ամ-

Digitized by Google

բարձջիք և բարձրացուցջիք զգլուխս ձեր, զի մերձ է փրկութիւն ձեր։ Եւ ասաց առակ մի նոցա. տեսէք զթզենին և զամենայն ծառ. յորժամ ցուցանիցեն զպտուղ իւրեանց, տեսանէք՝ և ի նոցանէ ճանաչէք եթէ մերձ է ամառն։ Նոյնպէս և դուք՝ յորժամ տեսանիցէք զայս ամենայն եղեալ, գիտասջիք թէ մերձ է արքայութիւն Աստուծոյ։ Ամէն ասեմ ձեզ, թէ ոչ անցցէ ազգս այս, մինչև այս ամենայն լինիցի։ Երկինք և երկիր անցցեն, և բանք իմ ոչ անցանիցեն։ Զգոյշ լերուք անձանց, գուցէ ծանրանայցեն սիրտք ձեր շուայտութեամբ և արբեցութեամբ և հոգովք աշխարհականօք. և յանկարծակի հասանիցէ ի վերայ ձեր օրն այն. զի իբրև զորոգայթ հասանիցէ ի վերայ ամենեցուն որ բնակեալ են ընդ ամենայն երեսս երկրի։ Արթուն կացէք այսուհետև, յամենայն ժամ աղօթս արարէք, զի արժանի լինիջիք զերծանել յայնմ ամենայնէ որ լինելոց է, և կալ առաջի որդւոյ մարդոյ։ Եւ ի տուէ ի տաճարին ուսուցանէր, և զգիշերս ելեալ ագանէր ի լերինն՝ որ կոչէր ձիթենեաց։ Եւ ամենայն ժողովուրդն կանխէր ընդ առաւօտս առ նա ի տաճարն՝ լսել ի նմանէ։ 38։

## ԱԶ. ԴԶ.

### Սրբոյ Աւետարանիս որ ըստ Յովհաննու. Ժ. 22։

### Առ Տերամբ մերով Յիսուսիւ Քրիստոսիւ

Եղեն յայնժամ նաւակատիքն յԵրուսաղէմ, և ձմեռն էր. և շրջէր Յիսուս ի տաճարին՝ ի սրահին Սողոմոնի։ Շուրջ եղեն զնովաւ Հրեայքն և ասեն. մինչև յե՞րբ թափես զոգիս մեր, եթէ դու ես Քրիստոսն՝ ասա մեզ համարձակ։ Պատասխանի ետ նոցա Յիսուս և ասէ. ասացի ձեզ՝ և ոչ հաւատայք ինձ. զգործսն զոր ես գործեմ յանուն Հօր իմոյ՝ նոքին իսկ վկայեն վասն իմ. այլ դուք ոչ հաւատայք, զի չէք յոչխարաց անտի իմոց։ Ոչխարք իմ ձայնի իմում լսեն, և ես ճանաչեմ զնոսա, և զկնի իմ գան. և ես տամ նոցա զկեանսն յաւիտենականս, և մի՛ կորիցեն ի յաւիտեան, և մի՛ ոք յափշտակեսցէ զնոսա ի ձեռաց իմոց։ Հայրն իմ որ ետ ինձ զնոսա՝ մեծ է քան զամենայն, և ոչ ոք կարէ յափշտակել ի ձեռաց Հօր իմոյ. ես և Հայր



Digitized by Google

*իմ մի եմք։ Վէմս առին Հրեայքն՝ զի քարկոծ արասցեն զՆա։ Պատասխանի ետ Նոցա Յիսուս. բազում գործս բարիս ցուցի ձեզ ի Հօրէ իմմէ, վասն որո՞յ գործոյ ի Նոցանէ քարկոծ առնէք զիս։ Պատասխանի ետուն Նմա Հրեայքն. վասն բարւոյ գործոյ ոչ առնեմք զքեզ քարկոծ, այլ վասն հայհոյութեան. և զի դու մարդ ես, և զանձն քո Աստուած առնես։ Պատասխանի ետ Նոցա Յիսուս. ո՞չ յօրէնսն ձեր գրեալ է. ես ասացի թէ աստուածք իցէք. իսկ եթէ զնոսա աստուածս ասէ՝ առ որս բանն Աստուծոյ եղև, և չէ մարթ եղծանել գրոյն, իսկ զոր Հայր սրբեաց և առաքեաց յաշխարհ, դուք ասէք՝ թէ հայհոյես, զի ասացի թէ Որդի Աստուծոյ եմ։ Եթէ ոչ գործեմ զգործս Հօր իմոյ, մի՛ հաւատայք ինձ. ապա թէ գործեմ, թէ և ինձ ոչ հաւատայք, սակայն գործոցն հաւատացէք. զի գիտասջիք և ծանիջիք՝ եթէ Հայր յիս և ես ի Հայր։ Խնդրէին զՆա ունել, և ել ի ձեռաց Նոցա։ Եւ գնաց միւսանգամ յայն կոյս Յորդանանու, ի տեղին ուր էր Յովհաննէս զառաջինն և մկրտէր, և անդ լինէր։ Եկին բազումք առ Նա և ասեն. զի Յովհաննէս նշան ինչ ոչ արար. բայց զամենայն զոր ասաց Յովհաննէս վասն Նորա՝ ճշմարիտ էր. և բազումք հաւատացին ի Նա անդ։ 42։*

---

Զնի աւետարանին առ ծուխ մի յԱստուածանեղէն և տուն մի յԱրարիչէն կամ յԻս ասացիէն։

---

Երգ Տեառն Ներսէսի կաթողիկոսի՝ ասացեալ վասն առ ի Քրիստոս ննջեցելոց։

---

## ԲԿ. ԳԿ.

*Աստուած անեղ անժամանակ Հայր անըսկիզբն և անքանակ. Որդւոյ պատճառ ծննդեամբ անճառ Հոգւոյ բղխմամբ աղբերաբար. աղաչեմք ըզքեզ գթած երկայնամիտ և ողորմած. ‖ ողորմեա քո ստեղծուածոյս ի քեզ յուսով ննջեցելոյս։*

*Բանդ որ ի ծոցց Հօր միածին և կենարար սկըզբնա-*

Digitized by Google

տըպին. որով երկինըք գոյացան աշխարհըս լրիւ հաստատեցան. հայցեմք ի քէն Տէր և փըրկիչ ամենողորմ և կեցուցիչ. ողորմեա՛:

Գերագոյն շնորհաց բաշխող երկնաւորաց և երկրայնոց. կեանք և կենաց տըւող Հոգի Հօր և Որդւոյ արարչակից. խընդրեմք ի քէն աղբիւր բարեաց արբուցանողըդ ծարաւեաց. ողորմեա՛:

Դաւանեմք ընդ սրովբէից զկենդանարարըդ համայնից. երեքսըրբեան մի տէրութիւն Հայր և Որդի և սուրբ Հոգի. յոր հանգուցեալըս մըկըրտեալ և հաւատով խոստովանեալ. ողորմեա՛:

Երրակի թիւ կատարեալ յերիս անձինըս բաժանեալ. Աստուածութեամբ միաւորեալ միով բնութեամբ հաւասարեալ. յորմէ կապեալք և արձակիմք և վերըստին անլոյծ կապիմք. ողորմեա՛:

Զէակիցըդ Հօր զՈրդի փառաւորեմք անլըռելի. որ իջեր յարգանդ կուսին զադամայինն առեր մարմին. աղաչանօք Աստուածածնին անապական քում ծընողին. ողորմեա՛:

Էրեւեցար մարմնով յերկրի որ ի Հօրէ անմեկնելի. ընդ հողեղէնըս բնակեցար ի հրեղինաց երկըրպագեալըդ. պաղատանօք երկնաւորաց փառաբանիչ քոց հրեշտակաց. ողորմեա՛:

Ըստ օրինացըն Մովսէսի ընծայեցար ի տաճարին. զի ըզբնութիւնըս մարդկային ընծայեսցես Հօր ի յերկինս. խընդրըրուածովք սուրբ ծերունւոյն քեւ ի կապից արձակելոյն. ողորմեա՛:

Թագաւորըդ հրեղինաց որ ընդ մարդկան հողեղինաց. յերեւեցար տնօրինաբար կրեցեր ըզկիրըս մարդկաբար. որ վասըն մեր զայս ամենայն ի յանձն առեր խոնարհութեամբ. ողորմեա՛:

## ԲՁ. ԳՁ.

Ժողովեալքս ի հրաժարումն ծառայի քո յաշխարհէ. հայցեմք ի քէն արտասուելով և պաղատիմք զայս ասելով. ճանապարհ ընդ քեզ եկից հանգուցելոյս լեր ուղեկից. ‖ Ի յօթեվանս հօր քո լուսոյ ըզնընջեցեալըս մեր հանգո :

Ի փրկութեան մերոյ սկըզբան մըկըրտեցար ի Յոր-դանան. զոր շնորհեցեր նոր աւազան ի մաքրութիւն մե-ղաց մարդկան. հայցմամբ կըրկին կարապետին մեծին ի ծնունդըս Մըկըրտչին. ի յօթեվանս :

Լուսաւոր ձայնիւ յերկնից զքեզ դաւանեաց Հայր էակից. աղաւնակերպ Հոգին իջեալ առ համագոյդ իւր հանգուցեալ. ըզմըկըրտեալըս նովին Հոգւով յորդէգրու-թիւն Հօր հաւատով. ի յօթեվանս :

Խաւար մեղաց հալածեցաւ լոյս գիտութեան քեւ ծա-գեցաւ. խայթուած օձին բըժըշկեցաւ հիւանդութիւն մեր ողջացաւ. կենդանարարըդ մեռելոց և լուսատուդ խա-ւարելոց. ի յօթեվանս :

Ծագումն անուն առ ի Հօրէ որ ընտրեցեր ի յաշխար-հէ. լուսաւորիչ տիեզերաց ըզդաս ընտրեալ աշակեր-տաց. աղաչանօք առաքելոց փող յարութեան մեր եղե-լոց. ի յօթեվանս :

Կեանք ի կենաց լոյս ի լուսոյ որ ըստեղծեր զմեզ ի հողոյ. նորոգեցեր դարձեալ կըրկին ծնընդեամբ սըրբոյ աւազանին. զոր կեցուցեր շնորհիւ քոյին ի մահուանէն այն առաջին. ի յօթեվանս :

Հոգւով լըցեր զմարդն առաջին զոր կորուսեալ խաբ-մամբ չարին. ըզնոյն հոգի բանիւ քոյին հեղեր յոգիս մեր վերըստին. նովին հոգւով սուրբ եւ բարի առաջնոր-դեա հոգւոյ սորին. ի յօթեվանս :

Զայնեցեր առ Ղազարոս որով մտուր մեռելոց յոյս. կենդանութեամբ չորեքօրեայն կենդանացան որք յԱդամայն. կենաց ձայնիւ վերջին փողոյ կոչեա ըզդա յայսըմ հողոյ. Ի յօթեվանս :

Դողեալ սարսեաց պահակ մահու ի կենարար ձայնին Սրբոյ. արագապէս զոյգ ընդ բանին եւ ըզմեռեալն ըստ հրամանին. Իշխանք օդոյս այս սարսեսցեն զհոգի սորա մի արգելցեն. Ի յօթեվանս :

## ԱԿ. ԳԿ.

Ճանապարհ մոլորելոց եւ ճառագայթ խաւարելոց. հրաւիրեցեր զորդիս լուսոյ ի յերկնային հարսանիս քո. ընդ զուարճալից անդ ժողովոց արժանացո ըզսա դասուց. Լէ լապտերօք մոյծ յառագաստ ընդ իմաստուն սուրբ կուսանացն :

Մերով բնութեամբ զոր ըզգեցար ի փայտ խաչին բեւեռեցար. լուծանելով զմեզ ի մեղաց ի նախահօրըն կապանաց. լոյծ եւ ըզսա ի յանցանաց վասըն քո սուրբ չարչարանաց. Լէ լապտերօք :

Յետ կամաւոր մահու խաչի եդար ի նոր գերեզմանի. երեքօրեայ թաղմամբ յերկրի նոր ըստեղծեր զմեզ կենդանի. զիջեալս ընդ քեզ ի հող մահու վերակոչեա ձայնիւ փողոյ. Լէ լապտերօք :

Նստեալ կանանցն իւղաբերից եւ ողբային արտասուալից. երբ ըզմեռեալ անյուսալից ըզկենդանիդ յաւիտենից. վասըն նոցին սուրբ արտասուաց մաքրեա ըզսա ի յանցանաց. Լէ լապտերօք :

Շարժեալ հիմանցըն դըժոխոց ի տեսանելըն ըզքեզ ներքնոց. հաներ զհոգիսն որ ի բանտին կապեալ զին-

Digitized by Google

խանըն մահածին . ընդ հանգուցեալ հոգիս սըրբոց հանգո զհոգի ննջեցելոյս . լէ լապտերաք ։

Ուրախութեամբ զօրք երկնային յերկնից յերկիր էջանէին . յորժամ յարեար ի մեռելոց լոյս ծագեցար արարածոց . սուրբ յարութեամբ քո կենարար յարո ըզսա ի կեանս անմահ . լէ լապտերաք ։

Զհանդուրժեալ պահապանացն ի յերկիւղէ երկնաւորացն . որք աւետիս տային կանանց թէ մահ լուծաւ մահկանացուաց . սա որ մահու քո տընկակից լեցի կենացդ հաղորդակից . լէ լապտերաք ։

Պարակցեալ անմարմնականքն առ կենսատու սուրբ գերեզմանն . տան աւետիս ազգի մարդկան վասըն կենացն յաւէժական . դասաւորեա պարուց նոցին ըզննջեցեալս յօրըն վերջին . լէ լապտերաք ։

Զահաւորեալ նըշան խաչին յարեւելից փայլեալ ծագին . հաւատացեալքն ի քեզ բերկրին և ուրացողքն կոծեսցին . զերկըրպագուս սըրբոյ խաչին պայծառացո լուսով նորին . լէ լապտերաք ։

## ԱՁ· ԳՁ·

Ուրախ գործեալ երկնաւորաց գան առաջի քո նախընթաց . զընտրեալըս քո ժողովելով քեզ ընդառաջ բերեն ամպով . ընդ աղաւնեաց օդապարից խառնեա ըզսա սուրբ երամից . ‖ դասաւորեա ըզսա վերնոց երգել ըզփառս ընդ զուարթնոց ։

Սարսափին տարերք երկրի յորժամ փառօք գաս հայրենի . արեգական լոյս խաւարի լուսինն աստեղքըն նըւաղին . ըզսա յաւուրն աներեկի լուսաւորեա լուսով քոյին . դասաւորեա ։

Digitized by Google

Վերնական զօրացըն պետ փողէ բարբառ աւետաբեր․ արիք մեռեալք որք յԱդամայ քանզի ահա եկըն փեսայ․ ընդ հարսնացեալ մաքուր հոգւոց կարգեալ ըզսա ի թիւ սրբոց․ դասաւորեա։

Տէրական յաթոռ նըստիս յարարածոց երկըրպագիս․ արդարութեամբ զաշխարհ դատես վարձս ըստ գործոց հատուցանես․ յայնժամ շնորհեա ողորմութեամբ նընջեցելոյս մեր թողութիւն․ դասաւորեա։

Րամեալ մարդկան ազգ ժողովին որք յԱդամայ ծըննեալք լինին․ եւ հրեղինաց դասք երկնային համանգամայն վայրաբերին․ ի յայնմ ահեղ հրապարակին յիշեա ըզսա յօրն ահագին․ դասաւորեա։

Ցուցանին գաղտնիք մարդկան իւրաքանչիւր որ գործեցան․ բարեաց գործողքըն պըսակին չարեացն ի հուրն անշէջ մատնին․ յայնժամ յիշեա զսորա բարին գործըք մեղացըն ջընջեսցին․ դասաւորեա։

Ւսին պըսակք զանազանեալք եւ պատմուճանք լուսափայլեալք․ սուրբ վըկայիցն ի գլուխ եդեալ եւ արդարոցըն զարդարեալ․ հաղորդս արա հայցմամբ նոցին ըզսա լուսոյ փառաց նոցին․ դասաւորեա։

Փառաց ի փառըս բարձրանան աջակողմանքըն վերանան․ յորժամ լըսեն զերանական ձայն օրհնութեան ի քէն կոչման․ նընջեցելոյս մեր լըսեցո զաստուածային բարբառըդ քո․ դասաւորեա։

Քահանայք եւ ժողովուրդք հայցեմք ի քէն Տէր բարեգութ․ ընդ նընջեցեալսըն հաւատով ընկալ ըզմեզ նովին յուսով․ յԵրուսաղէմ քաղաք վերին յորում արդարքըն ժողովին․ փառս վերերգել միշտ ընդ նոսին Երրորդութեանդ երրեակ անձին։

Digitized by Google

## ԴՋ.

Արարիչ եւ մարդասէր անոխակալ եւ բարեգութ. որ գովեալդ ի սրովբէից Տէր դատաւոր արդարութեան. ընդ սըրբոց առաքելոց Տէր պըսակեա զմեր նընջեցեալսն. ‖ Ողորմած Տէր ողորմեա հոգւոց ըմեր նընջեցելոց։

Յորժամ գըրեալքըն կատարին որ զայնմ աւուր մեզ պատմեցին. մարգարէից բանքըն յարգին առաքելոցըն վըճարին. Ողորմած։

Ի վերին Երուսաղէմ ի բնակարանըս հրեշտակաց. ուր Ենովք եւ Եղիաս կան ծերացեալ աղաւնակերպ ի դրախտին եդեմական պայծառացեալ արժանապէս. Ողորմած։

Թագաւոր փառաց Քրիստոս որ ժամանեալ գաս ի յերկնից ի վերայ թեւոց հողմոց քո հայրենի կերպարանաւք և առնես հրափորձութեամբ ըզքըննութիւն որդւոց մարդկան. Ողորմած։

Ի դնել բեմին բազմի փեսային. եւ առաջադատըն զարդարի. Գաբրիելեան փողըն գոչէ սուրբք ամենայն անդր հաւաքին արդարոց դասքըն բերկրին իսկ մեղաւորքըն թախծին. Ողոր։

Յորժամ հընչին փողն լինի և զետական գիրըն յայտնի ճառագայթ սըրբոյ խաչին յարեւելից փառաւք ծագի հրեշտակաց գնդըք ծաւալին հրեշտակապետք պարունակին. Ողորմած։

Ահեղ խորհուրդ քահանային բազկատարած կայր ի բեմին առաջի սուրբ սեղանոյն հուր չիջանի խաւար մերժի տըրտմեալ հոգիքն ուրախանան զի թողութիւն մեղաց լինի. Ողորմած։

Մովսէս աստուածախօսն և Ահարոն ըղետացին մարգարէքն Իսրայէլի եւ քահանայք հին օրինին յառաջագոյն մեզ ծանուցին ընդգալուստ սուրբ Միածնին. ի փրկութիւն մեզ յայտնեցին. յանապատին կերպարէին. ողորմած։

Տրտմահաղորդ չարչարանօք ի յանձն առեր ըզմահ խաչին եւ փայտին բարձող եղեր վասն Ադամայ նախաստեղծին. ողորմած։

Զարհուրեցան զօրք երկնայինք յորժամ տեսին զՏէրդ ի խաչին արեգական լոյս քողարկեալ և լոյս լուսնին նուաղեցաւ յահեղ փառաց Աստուածորդւոյն խաւար եղեւ ընդ տիեզերս. ողորմած։

Ուրախացան ազգք մարդկան յորժամ լուան զքո յարութիւնդ նորափետուր զարդարեցան ի յարութեան սուրբ Միածնիդ. ողորմած։

Աղաչանօք սրբոյ խաչին և անբարբառ բարեխօսին. եւ սրբոյ Աստուածածնին և Յովհաննու կարապետին և սրբոյն Ստեփանոսի. և առաջին մարտիրոսին եւ սրբոյ Լուսաւորչին հայաստանեայց հայրապետին. և սրբոց առաքելոց և համօրէն մարտիրոսաց. ողորմած։

Ես մոռացեալ ի վերանալ յինէն աւուրց իմոց. յով երթայցեմ ես այսօր, յառաջին օթեւանին զոր ոչ գիտէի. || Օգնեա և ինձ Քրիստոս այսօր. յառաջին ճանապարհին՝ և ի միւսանգամ գալըստեանդ քո օգնեա ինձ։

Եկն եհաս յօր վախճանի իմոյ լալում. ողբում և աշխարհում. սիրտ իմ խռովեցաւ յիս և ոսկերք իմ ցամաքեցան. օգնեա։

Digitized by Google

Ի մահիճս իմ զարթուցի զիս պահանջողք հոգւոյ իմոյ տանէին զիս ի ճանապարհ հեռագոյն զոր ոչ գիտէի. օգնեա։

Նայեցայ և ոչ ոք էր որ օգնէր ինձ ապաւինեցայ յԱստուած փրկութեան իմոյ ցընծացէ հոգի իմ յարքայութեան քում. օգնեա։

Գրեցայ ես ի գիր կենդանութեան և մեկնեցայ երթալ առ արարիչն երկնի և երկրի. օգնեա։

Յանըստուեր և յանեղ լուսոյն հեռացայ խաբմամբ խաւարին ճաշակեցի զմահաբեր պտուղն հողանայ պատկեր ստեղծողիդ. օգնեա։

Յանջատման հոգւոյս ի մարմնոյս. ի քակտել գեղեցիկ շինուածոյս զարհուրիմ ի սպառնալեաց թագաւորին թէ պահանջէ յինէն զտաղանդ պատուիրանին. օգնեա։

Կուսածին մարդացեալ Աստուած իմ Յիսուս յայնմ աւուր յահեղ ատենին զգինս արեան քո մի դատապարտեր. օգնեա։

Սոսկալի է օր վախճանին և ահեղ է օր դատաստանին. յայնըմ աւուր յահեղ ատենին ըզգինս արեան քո մի անտես առներ. զի պատկեր եմ բարերար ստեղծողիդ. օգնեա։

Ձայնաւոր դատաստան դատաւորիդ տեսի և զարհուրեցայ. զի անպատրաստ եգիտ զիս ի հրամանաց քոց թագաւոր յաւիտենից. օգնեա։

Աստուածածին անարատ մայր Տեառն և կոյս սուրբ. բարեխօսեա առ Որդիդ քո միածին. զի փըրկեսցէ զմեզ ի սպառնալեաց գեհենոյն. և պարգեւեսցէ մեզ զերկնից արքայութիւնն և հանգուսցէ զհոգիս մեր ննջեցելոցն. օգնեա։

Digitized by Google

### ՄԱՂԹԱՆՔ

Հոգւոցն հանգուցելոց, Քրիստոս Աստուած, արա հանգիստ և ողորմութիւն. և մեզ մեղաւորացս շնորհեա զթողութիւն յանցանաց:

### ՔԱՐՈԶ

Եւ ևս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք:

Վասն հանգուցեալ հոգւոցն աղաչեսցուք զփրկիչն մեր Քրիստոս, զի զնոսա ընդ արդարսն դասեսցէ. և զմեզ կեցուսցէ շնորհիւ ողորմութեան իւրոյ: Ամենակալ Տէր Աստուած մեր, կեցո և ողորմեա:

Տէր ողորմեա, Տէր ողորմեա, Տէր ողորմեա:

### ԱՂՕԹՔ

Քրիստոս Որդի Աստուծոյ անոխակալ և բարեգութ, գթա քո արարչական սիրովդ ի հոգիս հանգուցեալ ծառայից քոց: Յիշեա յաւուր մեծի գալստեան արքայութեան քոյ. արա արժանի ողորմութեան, քաւութեան և թողութեան մեղաց: Դասաւորեալ պայծառացո ընդ սուրբս քո յաջակողմեան դասուն: Զի դու ես Տէր և արարիչ ամենեցուն, դատաւոր կենդանեաց և մեռելոց: Եւ քեզ վայելէ փառք իշխանութիւն և պատիւ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

Օրհնեալ Տէր մեր: Հայր մեր որ յերկինս:

---

Եւ ապա ասէ օրհնութիւն բոլոր պաշտաման աւուրն, կամ է յայնէն. և չինի մաղթանքն և քարոզն և աղօթքն:

### ՄԱՂԹԱՆՔ ՏԷՐՈՒՆԱԿԱՆ ՏՕՆԻՑ

Փառք հրաշափառ (ծննդեան) քոյ Տէր. զօրհնեալ և զփառաւորեալ զհրաշալի և զյաղթող (զծնունդ) քո օրհնեմք և փառաւորեմք:

Մարդասէր Տէր, վասն սրբուհւոյ անարատ մօր քոյ և կուսի, և վասն խաչի քոյ պատուականի ընկալ զաղաչանս մեր, և կեցո զմեզ:

Սոյնպէս ասա և յամենայն փոխս տէրունականս բոլոր պաշտամանց աւուրն, թէ յայտնութեան, թէ գալստեան, թէ տնօրէնութեան,

ընդ խաչելութեան, ընդ թաղման, ընդ յարութեան, ընդ համբարձման, ընդ գալստեան հոգւոյն սրբոյ, ընդ պայծառակերպութեան, և ընդ ի տօնս խաչէ և եկեղեցւոյ։

## ՄԱՂԹԱՆՔ Ի ՏՕՆՍ ՍՐԲՈՑ

Բարեխօսութեամբ սրբուհւոյ Աստուածածնին, և Յովհաննու մկրտչին, սրբոյն Ստեփանոսի նախավկային և սրբոյն Գրիգորի մերոյ լուսաւորչին, յիշատակաւ և աղօթիւք սրբոց այս անուն, որոց այսօր է յիշատակ, և վասն խաչի քոյ պատուականի Տէր ընկալ զաղաչանս մեր և կեցո զմեզ։

---

## ՄԱՂԹԱՆՔ ԳԱՀՈՑ

Երանեալքն։

ԴԿ. Քրիստոս է իմ Աստուած, և փառաւոր անեմ զսա. Աստուած հօր իմոյ, և բարձր արարից զսա։ Մարդասէր Տէր, վասն սրբուհւոյ անարատ մօր քոյ և կուսի, և վասն խաչի քոյ պատուականի ընկալ զաղաչանս մեր և կեցո զմեզ։

Երկինք պատմենքն։

ԱՁ. Տուք փառս Աստուծոյ, տուք օրհնութիւն մարդասիրին՝ Թագաւորին յաւիտենից, որ փրկէ զծառայս իւր և կեցուցանէ։ Մարդասէր Տէր, և այլն։

Մի՛ նախանձիրքն։

ԱԿ. Դու ես Տէր մեր, դու ես Քրիստոս փրկիչ մեր. զքեզ օրհնեն անձինք մեր։ Մարդասէր Տէր, և այլն։

Ողորմեայքն։

ԲՁ. Բարձրացաւ եղջիւր իմ յԱստուած փրկիչ իմ. հաստատեցաւ սիրտ իմ ի Տէր Տէրամբ և հաւատով։ Մարդասէր Տէր, և այլն։

Իսրաէլքն։

ԲԿ. Խաղաղութեանց տուող Քրիստոս, զխաղաղութիւն և զողորմութիւն քո պարգևեա մեզ։ Մարդասէր Տէր, և այլն։

Տէր ապաւէնքն

ԳՁ. Յոյս կենդանութեան, յոյս և ապաւէն փրկութեան Տէր Յիսուս, փրկեա և փառաւորեա զցաւս անձին իմոյ։ Մարդասէր Տէր, և այլն։

Digitized by Google

Խոստովանքն։

Գկ. Եկեսցեն աղօթք մեր ի տաճար սուրբ քո, խոնարհեսցի ունկն քո ի խնդրուածս մեր։ Մարդասէր Տէր, և այլն։

Ի Նեղութեանն։

Դձ. Լուր մեզ Տէր, լուր մեզ աստուածային ողորմութեամբ, և գթութեամբ քով խնայեա յարարածս քո։ Մարդասէր Տէր, և այլն։

---

Քարոզ Երանեալ և Իբրև կանոնոցն։

Դկ. Բկ.

Վասն ի վերուստ խաղաղութեան և փրկութեան անձանց մերոց զՏէր աղաչեսցուք։

Տէր ողորմեա։

Վասն լսելի լինելոյ Տեառն Աստուծոյ ձայնի աղաչանաց մերոց զՏէր աղաչեսցուք։

Վասն քաւիչ և ներող լինելոյ Աստուծոյ ի վերայ մեղաց մերոց զՏէր աղաչեսցուք։

Վասն թողլոյ մեզ զամենայն յանցանս մեր զկամայ և զակամայ զՏէր աղաչեսցուք։

Վասն զի մի ընդ խոտանս գտանիցիմք յաւուրն պատասխանատուութեան զՏէր աղաչեսցուք։

Վասն հոգւոցն հանգուցելոց որք ճշմարիտ և ուղիղ հաւատով ի Քրիստոս ննջեցին զՏէր աղաչեսցուք։

Յիշեա Տէր և ողորմեա։

Եւ ևս միաբան վասն ճշմարիտ և սուրբ հաւատոյս մերոյ զՏէր աղաչեսցուք։

Զանձինս մեր և զմիմեանս Տեառն Աստուծոյ ամենակալին յանձն արասցուք։

Քեզ Տէր յանձն եղիցուք։

Ողորմեաց մեզ Տէր Աստուած մեր՝ ըստ մեծի ողորմութեան քում. ասասցուք ամենեքեան միաբանութեամբ։

Տէր ողորմեա. Տէր ողորմեա. Տէր ողորմեա։

ԱՂՕԹՔ

Տէր տուընջեան և գոյացուցիչ գիշերոյ, որ արարեր զտիւ ի զբօսանս բարեգործութեան ի փրկութիւն անձանց մերոց, և զգիշեր ի հանգիստ քնոյ տկարացեալ բնութեանս մերոյ։ Իսկ այժմ զարթուցեալ բացեր զբերանս մեր յօրհնաբանութիւն ահաւոր և փառաւորեալ անուանդ քում սրբոյ։ Ընկալ և այժմ զաղաչանս մեր, և յաջողեա մեզ ուղիղ հաւատով և առաքինասէր վարուք ի նոյն պաշտօն քո կանխել միշտ։ Եւ նովին կանոնիւս անդադար փառաւորել զՀայր և զՈրդի և զսուրբ Հոգիդ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

Խաղաղութիւն ամենեցուն։

Զքեզ՝ որ յամենայնի գթած և մարդասէր Տէրդ ես, աղաչեմք հանապազ, զի զօրացուսցես զմեզ օր ըստ օրէ կալ ի կարգի կրօնաւորութեան մերում. Թեթևացո Տէր զքաղցր լուծ քո՝ զոր եդեր ի վերայ մեր. զի կարասցուք կալ ի պատուիրանի քում, և զհաճոյսն առնել առաջի քո յամենայն ժամ ի տուէ և ի գիշերի։ Հրեշտակային երգակցութեամբ զքեզ օրհնել, զքեզ գովել, քեզ գոհութիւն և փառս մատուցանել ամենազօր տէրութեանդ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

Քարոզ Երկինք պատմեն և Տէր ապաւէն կանոնացն։

ԱՁ· ԳՁ·

Վասն բ գիշերիս և ի տուընջեան և յամենայն ժամու խնդրել մեզ զբան Տեառն զՏէր աղաչեսցուք։
Տէր ողորմեա։
Վասն չանկանելոյ մեզ ի փորձութիւն, որում ոչ կարեմք հանդուրժել զՏէր աղաչեսցուք։
Վասն անբիծ և անդատապարտ կալ մեզ առաջի ահեղ ատենին Քրիստոսի զՏէր աղաչեսցուք։
Վասն առաջնորդելոյ մեզ ի նաւահանգիստ կենացն անվախճանից զՏէր աղաչեսցուք։
Վասն արժանի լինելոյ մեզ վերին կոչմանն, և երկնից արքայութեան զՏէր աղաչեսցուք։

Վասն հոգւոցն հանգուցելոց որք ճշմարիտ և ուղիղ հաւատով ի Քրիստոս ննջեցին զՏէր աղաչեսցուք։

Ցնծեամ Տէ ար ե: ւ ո: ղորըմեա։

Եւ ևս միաբան վասն ճշմարիտ և սուրբ հաւատոյս մերոյ զՏէր աղաչեսցուք։

Զանձինս մեր և զմիմեանս Տեառն Աստուծոյ ամենակալին յանձն արասցուք։ — Քեզ Տեառնդ յանձն եղիցուք։

Ողորմեաց մեզ Տէր Աստուած մեր՝ ըստ մեծի ողորմութեան քում. ասասցուք ամենեքեան միաբանութեամբ։

Տէր ողորմեա: Տէր ողորմեա: Տէր ողորմեա։

ԱՂՕԹՔ

Ի գիշերի և ի տուընջեան և յամենայն ժամու զքեզ աղաչեմք, և ի քէն խնդրեմք մարդասէր Տէր։ Լուր մեզ Աստուած փրկիչ մեր, խոնարհեցո ունկն քո ի խնդրուածս մեր. զի մի ունայն լիցին վաստակք ծառայից քոց։ Այլ համարեա զաշխատութիւնս մեր ի գործ արդարութեան և ի պտուղ աստուածպաշտութեան։ Ընկալ Տէր զաղօթս և զերկրպագութիւնս մեր, և հաստ մեզ զողորմութիւն քո առատապէս։ Ծածկեա զմեզ ընդ հովանեաւ ամենազօր աջոյ քոյ։ Զօրացո զմեզ Տէր՝ զօրութեամբ սուրբ Հոգւոյդ։ Պահեա զմեզ որպէս բիբական, և արա առ մեզ նշան բարի ի գովեստ և ի փառաբանութիւն անուանդ քում սրբոյ։ Զի ի քո փառս կատարի ամենայն արարածոց մշտնջենաւոր փառաբանութիւն ի բարձունս Հօր և Որդւոյ և Հոգւոյդ սրբոյ. այժմ և միշտ և։

Խաղաղութիւն ամենեցուն։

Հովիւ քաջ, հովիւ բարի և յաւիտենական, նայեա և այց արա բանաւոր հօտի քոյ, զոր ժողովեցեր առ քեզ գթութեամբ քո։ Զի քո առաջի կամք Տէր, և առ ի քէն ողորմութեանցդ և գթութեանցդ ակն ունիմք։ Զամենեսեան օրհնեա, զամենեսեան իմաստնացո, զամենեսեան լուսաւորեա, ամենեցուն պարգևեա զերկնից արքայութիւնդ։ Վասն զի դու ես Տէր կենաց, և Աստուած ողորմութեանց. և քեզ վայելէ փառք, իշխանութիւն և պատիւ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

Քարոզ Մի՛ նախանձիր և Խոստովան կանոնացն։

## ԱԿ․ ԳԿ․

Վասն ուղղելոյ զգնացս մեր ի ճանապարհս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք։
Տէր ողորմեա։
Վասն ցրելոյ ի մէնջ զամենայն խորհուրդս չարին ըզՏէր աղաչեսցուք։
Վասն պարգևելոյ մեզ առողջ խորհուրդս և առաքինի վարս զՏէր աղաչեսցուք։
Վասն պահելոյ զմեզ ընդ հովանեաւ ամենազօր աջոյն իւրոյ զՏէր աղաչեսցուք։
Վասն խորտակելոյ զհակառակորդն վաղվաղակի ընդ ոտիւք մերովք զՏէր աղաչեսցուք։
Վասն հոգւոցն հանգուցելոց որք ճշմարիտ և ուղիղ հաւատով ի Քրիստոս ննջեցին զՏէր աղաչեսցուք։
Յիշեա։ Տէր եւ ողորմեա։
Եւ ևս միաբան վասն ճշմարիտ և սուրբ հաւատոյս։
Զանձինս մեր և զմիմեանս։ Ողորմեաց մեզ Տէր։

### ԱՂՕԹՔ

Տէր երկնի և երկրի՝ արարիչ ամենայն արարածոց՝ երևելեաց և աներևութից․ առ քեզ կարդամք յամենայն ժամ․ զի ընդ ամենայն տեղիս է տէրութիւն քո, և արքայութիւն քո ամենեցուն տիրէ։ Շնորհեա մեզ երկիւղիւ ի պաշտօնս քո կանխել հանապազ․ սիրել զքեզ ի բոլոր սրտէ, ի բովանդակ մտաց, և յամենայն զօրութենէ մերմէ պահել զպատուիրանս քո․ համբառնալ առ քեզ ըզձեռս մեր ի սրբութիւն առանց բարկութեան և երկմտութեան, և գտանել ի քէն զշնորհս և զողորմութիւն, և զառաքինասէր գործոց յաջողութիւն։ Վասն զի դու ես Տէր կենաց և Աստուած ողորմութեանց․ և քեզ վայելեն փառք, իշխանութիւն և պատիւ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից․ ամէն։

### Խաղաղութիւն ամենեցուն։

Քում ամենազօր և յաղթող տէրութեանդ կրկնի ամենայն ծունր յերկրպագութիւն, և փառաւորի յամենեցունց

Թագաւորութիւն քո։ Նայեա յերկրպագութիւնս մեր, և տուր մեզ առնել զարդարութիւն ճշմարտութեան։ Վասն զի դու ես Աստուած խաղաղութեան՝ որ բարձեր զթըշնամութիւն ի միջոյ և արարեր խաղաղութիւն յերկինս և յերկրի։ Հեռաւորաց և մերձաւորաց աւետարանեցեր զնոր պարգևս քոյին բարեացդ։ Որում և զմեզ մեծի շնորհացդ արժանաւորս արասցես՝ դասելով ընդ ճշմարիտ երկրպագուս քո, Աստուած մեր և Տէր և փրկիչ Յիսուս Քրիստոս։ Որ ես օրհնեալ ընդ Հօր և ընդ սրբոյ Հոգւոյն, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

Քարոզ Ողորմեա և ի Նեղութեան կանոնացն։

ԲՁ· ԴՁ·

Վասըն գըթանելոյ մեզ շնորհս և ողորմութիւն ի բարերար Տեառնէ մերմէ ըզՏէր աղաչեսցուք։

Տէր ողորմեա։

Վասն փրկելոյ զմեզ ի գրպարտութենէ մարդկան և յորոգայթից սատանայի զՏէր աղաչեսցուք։

Վասն ամենայն անձանց քրիստոնէից և տանց հաւատացելոց զՏէր աղաչեսցուք։

Վասն որք ի լերինս՝ յայրս և ի փապարս բնակեալ են սուրբ հարքն մեր զՏէր աղաչեսցուք։

Վասն որք սաղմոսիւք և օրհնութեամբ կատարեն զամենայն ժամանակս կենաց իւրեանց զՏէր աղաչեսցուք։

Վասն հոգւոցն հանգուցելոց որք ճշմարիտ և ուղիղ հաւատով ի Քրիստոս ննջեցին զՏէր աղաչեսցուք։

Եւ ևս միաբան։ Զանձինս մեր։ Ողորմեաց մեզ։

Տէր ողորմեա Տէր ողորմեա Տէր ողորմեա։

ԱՂՕԹՔ

Գոհանամք զքէն Տէր Աստուած մեր, որ զարթուցեր զմեզ ի հանգստենէ քնոյ շնորհիւ ողորմութեան քոյ։ Զարթո զմիտս մեր արդարութեամբ առ քեզ Տէր Աստուած մեր, զի տեսցեն աչք մեր զփրկութիւն քո։ Ե-



Digitized by Google

կեացէ և բնակեացէ առ մեզ աստուածութիւն քո. և ողորմութիւն քո հովանի և պահապան լիցի ի վերայ պաշտօնէից քոց: Եւ զմեզ զծառայքս քո արժանի արա ի տուէ և ի գիշերի և յամենայն ժամու միշտ խորհել ի սէր պատուիրանաց քոց. և գոհանալով փառաւորեսցուք զՀայր և զՈրդի և զսուրբ Հոգիդ, այժմ և:

Խաղաղութիւն ամենեցուն:

Կենդանարար զօրութիւն և աղբիւր անմահութեան դու ես Քրիստոս փրկիչ մեր. որ շնորհեցեր մեզ ի մէջ գիշերի յառնել և խոստովան լինել առ քեզ վասն իրաւանց և արդարութեան քոյ: Եւ այժմ աղաչեմք զքեզ Տէր Աստուած մեր, արա զմեզ արթունս և պատրաստս ի ժամ առաւօտու ընդ սուրբս քո: Եւ ընդ նոսին գոհանալով փառաւորեսցուք զքեզ ընդ Հօր և ընդ Հոգւոյդ սրբոյ, այժմ և միշտ:

---

## ԱԼԷԼՈՒՔ ԳԻՇԵՐԱՑԻՆՔ ՏԷՐՈՒՆԱԿԱՆ ՏՕՆԻՑ

## ԱՁ

ԾՆՆԴԵԱՆ

Ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա:

Տէր հովուեսցէ զիս, և ինձ ինչ ոչ պակասեսցի:

Ի վայրի դալարւոջ անդ բնակեցոյց զիս, և առ ջուրս հանգստեան սնոյց զիս:

Փ. Ալէլուիա: ալէլուիա: ալէլուիա: ալէլուիա. ալէլուիա:

Իջցէ որպէս զանձրև ի վերայ գեղման, որպէս ցօղ զի ցօղէ յերկիր:

Ծագեսցի յաւուրս նորա արդարութիւն, բազում խաղաղութիւն մինչև կատարեսցի լուսին:

Փառք և երկրպագութիւն Հօր և Որդւոյ և սրբոյ Հոգւոյն: Այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

Digitized by Google

# ԱՁ

Դա՛սք հրեշտա՛կաց օրհնե՛ն ը՛նդ զքե՛զ : Քրի՛ս՛տ՛ո՛ս տո՛ս : ա՛լէլո՛ւիա՛ : մա՛րդկա՛ն ա՛ռ : մ՛ ա զգք սա՛ղմոսե՛մ ն քե՛զ : ա՛լէլո՛ւ . իա՛ :

Զկնի ամենայն տէրունական տօնի՝ որ ԱՁ լինի՝ շարականքն այս :

ՂԱԶԱՐՈՒ ՑԱՐՈՒԹԵԱՆ

Բա՛րձր առնեմ զքեզ Տէր, զի ընկալար զիս, և ոչ ուրախ արարեր զթշնամիս իմ յիս։

Տէր Աստուած իմ կարդացի առ քեզ, և բժշկեցեր զիս. Տէր հաներ ի դժոխոց զանձն իմ. փրկեցեր զիս յայնցանէ, որք իջանեն ի գո՛ւբ։

Փ. Եհա՛ն զիս ի գբոյ տառապանաց, ի կաւոյ և ի՛ տղմոյ։

Հաստատեա՛ց ի վերայ վիմի զոտս իմ, և ուղղեաց զգնա՛ցս իմ։

Փա՛ռք և երկրր։ Ա՛յժմ և միշտ։ Դա՛սք հրեշտա՛կաց։

ՑԱՐՈՒԹԵԱՆ

Ո՛ղորմութեա՛մբ Տեառն լի եղև երկիր, և բանիւ Տեառն երկինք հաստա՛տեցան։

Եւ հոգւովբ բերանոյ նորա ամենայն զօրութիւնք նո՛ցա։

Փ. Ցարեա՛ւ Աստուած, և ցրուեցան ամենայն թշնամիք նորա։

Փախեա՛ն ատելիք նորա յերեսաց նո՛րա։

Փա՛ռք և երկրր։ Ա՛յժմ և միշտ։ Դա՛սք հրեշտա՛կաց։

ՀԱՄԲԱՐՁՄԱՆ

Հա՛մբարձէ՛ք իշխանք զդրունս ձեր ի վեր, համբարձցին դրունք յաւիտենից, և մտցէ Թագաւո՛ր փառաց։

Ո՛վ է սա Թագաւոր փառաց, Տէր հզօր զօրութեամբ իւրով, Տէր հզօր ի պատերա՛զմի։

Փ. Կա՛ռք Աստուծոյ բիւրապատիկք. հազարք ուղղիչք, և Տէր ի նոսա ի Սինէ սրբութենէ՛ իւրմէ։

Digitized by Google

# Ա Զ

Ե՛լ ի բարձունս և գերեաց ըզգերութիւն. էառ աւար, բաշխեաց պարգևս և ետ որդւոց մա՛րդկա ծծ՛ն:

Փա՛ռք և երկըր: Ա՛յժմ և միշտ: Դա՛սք հրե՛շտա՛կաց:

ՀՈԳՒՈՅՆ ՍՐԲՈՅ ԳԱԼՍՏԵԱՆ

Ցանկալի՛ է նա քան զոսկի, և քան զականս պատուականս բազումս. քաղցր է նա քան զմեղր և խորիսխ:

Քանզի ծառա՛յ քո պահեսցէ զայս, ի պահելն նըմա հատուցումն բա՛զո ծծ՛ւմ:

Փ. Թե՛ւք աղաւնւոյ արծաթապատ. և թիկնամէջք նորա ի գո՛յն ոսկւոյ:

Ի զումարե՛լ երկնաւորին զթագաւորս ի վերայ նորա, ձիւնացին ի Սա՛ղմո ծծ՛ն:

Փա՛ռք և երկըր: Ա՛յժմ և միշտ: Դա՛սք հրե՛շտա՛կաց:

ԽԱԶԻ

Ցո՛ւպ քո և գաւազան, նոքա մխիթարեցին զիս:

Պատրա՛ստ արարեր առաջի իմ սեղան, ակն յանդիման նեղչաց ի՛մո ծծ՛ց:

Փ. Եստո՛ւր երկիւղածաց քոց նըշան, զի ապրեսցին յերեսաց ա՛ղեղան:

Որպէ՛ս փըրկեսցան սիրելիք քո, կեցո աջով քո, և լո՛ւր մե ծծ՛զ:

Փա՛ռք և երկըր: Ա՛յժմ և միշտ: Դա՛սք հրե՛շտա՛կաց:

ԵԿԵՂԵՑԻՈՅ

Լըսե՛լ ինձ ըղձայն օրհնութեան քոյ, և պատմել զամենայն ըսքանչե՛լիս քո:

Տէ՛ր սիրեցի զվայելչութիւն տան քոյ, և զտեղի յարկի փառա՛ց քո ծծ՛ց:

Փ. Երանի՛ զոր ընտրեցեր և ընկալար, և բնակեսցեն ի գաւի՛թըս քո:

Լըցցո՛ւք մեք ի բարութենէ տան քոյ. սուրբ է տաճար քո սքանչելի արդարո՛ւթեա ծծ՛մբ:

Փա՛ռք և երկըր: Ա՛յժմ և միշտ: Դա՛սք հրե՛շտա՛կաց:

Digitized by Google

# Ա Կ

## ԾՆՆԴԵԱՆ

Ալէլոծծուիա։ աա։ ալէ, ալոցա։ ա։ ալէ. ուիան։

Լուր դուստր և տես. խոնարհեցո զունկըն քո. մոռաց զժողովուրդ քո և զտուն հօր քոյ. զի ցանկացաւ թագաւոր գեղոյ քոյ։

Սա ինքն է Տէր քո՝ երկիր պագցես սըմա. և դուստրըր Ծուրայ երկիր պագցէ սըմա. և պատարագօք զերեսս սորա պաշտեսցեն մեծամեծք ի ժողովրդոց։

Փ. Ալէլուծծծ։ Զուա. ալէ։ ցա. ալոլուիան։

Նա կարդասցէ առ իս, հայր իմ ես դու, Աստուած ընդունող փրկութեան իմոյ։

Ես անդրանիկ արարից ըզնա, և բարձըր քան զամենայն թագաւորս երկրի։

Փառք և երկրպագութիւն Հօր և Որդւոյ և սըրբոյ Հոգւոյն։ Այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

Ալէլծա։ լոծ ուիա ալէ։ ածլո ուիա ա։ լէլո ա։ ծա. ուիան։

## ԾԱՂԿԱԶԱՐԴԻ

Տէր Աստուած մեր երեւեցաւ մեզ. արարէք տօնս ուրախութեան կանխաւ մինչև յանկիւնըս սեղանոյ։

Աստուած իմ ես դու, խոստովան եղէց քեզ. Աստուած իմ ես դու, և բարձր արարից ըզքեզ։

Փ. Լերինք ցընծասցեն առաջի Տեառն՝ զի գայ. և գայ նա ի դատել զերկիր։

Դատի զաշխարհս արդարութեամբ, և զժողովուրդս իւր ուղղութեամբ։

Փառք և երկրպագութիւն։ Այժմ և միշտ և։

Digitized by Google

# Ա Կ

## ՑԱՐՈՒԹԵԱՆ

Ծա՛փս հարէք ամենայն հեթանոսք. աղաղակեցէք առ Աստուած ի ձայն ցընծութեան։

Տէ՛ր բարձրեալ և ահարկու, թագաւոր մեծ ի վերայ ամենայն երկրի։

Փ. Հաճեցա՛ր Տէր ընդ երկիր քո. և դարձուցեր ըզգերութիւնն Յակովբայ։

Թողե՛ր զանիրաւութիւն ժողովրդեան քոյ, և ծածկեցեր զամենայն մե՛ղս նոցա։

Փա՛ռք և երկրպագութիւն։ Ա՛յժմ և միշտ և։

## ՀԱՄԲԱՐՁՄԱՆ

Համբարձա՛ւ Աստուած օրհնութեամբ, և Տէր մեր ձայնի՛ւ փողոյ։

Սաղմո՛ս ասացէք Աստուծոյ մերում, սաղմոս ասացէք թագաւորին մերում, սաղմոս ասացէք։

Փ. Որ հովուե՛սդ զԻսրայէլի նայեաց, որ առաջնորդես որպէս խաշին Յովսեփու։

Որ նըստի՛սդ ի քրովբէս, յայտնեաց առաջի Եփրեմի, Բենիամինի և Մանասէի։

Փա՛ռք և երկրպագութիւն։ Ա՛յժմ և միշտ և։

## ՀՈԳՒՈՅՆ ՍՐԲՈՅ ԳԱԼՍՏԵԱՆ

Սի՛րտ սուրբ հաստատեա յիս Աստուած. և հոգի ուղիղ նորոգեա ի փորի իմում։

Մի՛ ընկեներ զիս Տէր յերեսաց քոց, և զհոգի քո սուրբ մի՛ հաներ յինէն։

Փ. Գըտի՛ զԴաւիթ ծառայ իմ, և իւղով սըրբով իմով օծի՛ ըզնա։

Ձե՛ռն իմ ընկալցի ըզնա, և բազուկ իմ զօրացուսցէ՛ ըզնա։

Փա՛ռք և երկրպագութիւն։ Ա՛յժմ և միշտ և։

Digitized by Google

# ԱԿ — ԲՁ

## ԽԱՉԻ

Նշանք քո սրբեալ են Հզօր, ժողովուրդք ի Ներքոյ քոյ անկցին, ի սիրտս թշնամեաց Թագաւորի։

Աթոռ քո Աստուած յաւիտեանս յաւիտենից, գաւազան ուղղութեան, գաւազան արքայութեան քոյ։

Փ. Տուր զօրութիւն ծառայի քոյ, կեցո զորդի աղախնոյ քոյ, և արա առ իս Նշան բարութեան։

Տեսցեն ատելիք իմ և ամաչեսցեն, զի դու Տէր օգնեցեր ինձ, և մխիթարեցեր զիս։

Փառք և երկրպագութիւն։ Այժմ և միշտ և։

## ԵԿԵՂԵՑԻՈՅ

Մեծ է Տէր և օրհնեալ է յոյժ, ի քաղաքի Աստուծոյ մերոյ, ի լերան սուրբ Նորա։

Հաստարմատ ցնծութեամբ ցնծացէ ամենայն երկիր, լերինք Սիովնի, կողմանք հիւսիսոյ, քաղաք Թագաւորին մեծի։

Փ. Հիմունք Նորա ի լերանս սուրբ Նորա. սիրէ Տէր զդրունս Սիովնի առաւել քան զամենայն յարկսն Յակովբայ։

Փառաւորեալ են խօսեցաւ վասն քո, ահաւադիկ քաղաքդ Աստուծոյ։

Փառք և երկրպագութիւն։ Այժմ և միշտ և։

---

# ԲՁ

## ԾՆՆԴԵԱՆ

Ալ[illegible]

Իջցէ սա որպէս զանձրև ի վերայ գեղման, որպէս ցօղ զի ցօղէ յերկիր։

Ծագեսցի սա յաւուրս Նորա արդարութիւն. բազում խաղաղութիւն մինչև կատարեսցի լուսինն։

Digitized by Google

# Բ Ձ

Փ. Ալէլուիա … ալէլուիա ։ ալէլուիա ։

Ծանոյց Տէր զփրկութիւն իւր առաջի ազգաց, յայտնեաց զարդարութիւն իւր ։

Յիշեաց ողորմութեամբ իւրով զՅակովբ, ճշմարտութեամբ իւրով ըզտունն Իսրայէլի. և տեսին ամենայն ծագք երկրի զփրկութիւն Աստուծոյ մերոյ ։

Փառք և երկրպագութիւն Հօր և Որդւոյ և սրբոյ Հոգւոյն ։ Այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն ։

Ալէլուիա. ալէլուիա ։ ալէլուիա ։

ԱԻԱԳ ԵՐԿՈՒՇԱԲԱԹԻ

Զի նա ասաց և եղեն, հրամայեաց և հաստատեցան ։

Կացոյց ըզնոսա յաւիտեան, սահման եդ, որք ոչ անցանեն ։

Փ. Ի սկզբանէ Տէր զհիմունս երկրի հաստատեցեր, և գործք ձեռաց քոց երկինք են ։

Նոքա կորընչին. և դու կաս և մնաս յաւիտեան ։

Փառք և երկրպագութիւն ։ Այժմ և միշտ ։

ՅԱՐՈՒԹԵԱՆ

Յարեաւ Աստուած, և ցրուեցան ամենայն թըշնամիք նորա ։

Փախեան ատելիք նորա յերեսաց նորա ։

Փ. Տէր թագաւորեաց, վայելչութիւն ըզգեցաւ ։

Զգեցաւ Տէր զօրութիւն ընդ մէջ իւր ածաւ ։

Փառք և երկրպագութիւն ։ Այժմ և միշտ ։

ՀԱՄԲԱՐՁՄԱՆ

Կառք Աստուծոյ բիւրապատիկք. հազարք ուղղիչք, և Տէր ի նոսա ի Սինէ սրբութենէ իւրմէ ։

Digitized by Google

## Բ Ձ

Ել ի բարձունս և գերեաց ըզգերութիւն. էառ աւար, բաշխեաց պարգևս և ետ որդւոց մարդկան։

Փ. Որ դընէ յամպըս զգընացս իւր, և շըրջի նա ի վերայ թեւոց հողմոց։

Խոստովանութիւն և մեծվայելչութիւն զգեցար, արկար ըզլոյս որպէս զօթոց. ձըգեցեր զերկինս որպէս խորան, և արկեր ի վերայ ջուրց ըզվերնայարկս նորա։

Փառք և երկրպագութիւն։ Այժմ և միշտ։

ՀՈԳԻՈՅՆ ՍՐԲՈՅ ԳԱԼՍՏԵԱՆ·

Թեւք աղաւնւոյ արծաթապատ. և թիկնամէջք նորա ի գոյն ոսկւոյ։

Ի զումարել երկնաւորին ըզթագաւորս ի վերայ նորա, ձիւնացին ի Սաղմոն։

Փ. Առաքեա զհոգի քո և ստանաս ըզնոսա, և նորոգես զերեսս երկրի։

Եղիցին փառք Տեառն յաւիտեան, և Տէր ուրախ եղիցի յարարածս իւր։

Փառք և երկրպագութիւն։ Այժմ և միշտ։

ԳԱՑԾԱՌԱԿԵՐԳՈՒԹԵԱՆ

Քո են երկինք և քո է երկիր, զաշխարհս լրիւ իւրով դու հաստատեցեր։

Զհիւսիւս և զհարաւ դու արարեր, Թաբոր և Հերմոն յանուն քո ցընծասցեն։

Փ. Բարձրութիւնք լերանց նորա են. նորա է ծով և նա արար ըզնա, և զցամաք ձեռք նորա ստեղծին։

Եկայք երկիր պագցուք նմա, անկցուք և լացցուք առաջի Տեառն արարչին մերոյ։

Փառք և երկրպագութիւն։ Այժմ և միշտ։

ԽԱՉԻ

Ետուր երկիւղածաց քոց նշան, զի ապրեսցին յերեսաց աղեղան։

Digitized by Google

# ԲՁ — ԲԿ

Որպէս զի փրկեսցին սիրելիք քո, կեցո աջով քո, և լուր մեզ:

Փ. Դու պատրաստեցեր զուղղութիւն, զիրաւունս և զարդարութիւն Յակովբայ դու արարեր:

Բարձրացուցէք արարէք զՏէր Աստուած մեր, երկիր պագէք պատուանդանի ոտից նորա, զի սուրբ է:

Փառք և երկրպագութիւն: Այժմ և միշտ:

ՆԿԵՂԵՑԻՈՅ

Երանելի զոր ընտրեցեր և ընկալար, և բնակեսցեն ի գաւիթս քո:

Լցցուք մեք ի բարութենէ տան քոյ, սուրբ է տաճար քո սքանչելի արդարութեամբ:

Փ. Դու Տէր յաւիտեան կաս, և յիշատակ քո ազգէ մինչև յազգ:

Դու յարուցեալ ողորմեսցիս ի վերայ Սիոնի, ժամանակ ողորմելոյ նորա հասեալ է ժամ:

Փառք և երկրպագութիւն: Այժմ և միշտ:

---

## ԲԿ

ԾՆՆԴԵԱՆ

Ալ լէ լուիա: ա ամ: ա ամ: ալէ լուիա: ա ամ լու մ լուիա: ալ ա ամ:

Նա կարդասցէ առ իս, հայր իմ ես դու, Աստուած ընդունող փրկութեան իմոյ:

Եւ ես անդրանիկ արարից զնա, և բարձր քան զամենայն թագաւորս երկրի:

Փ. Ա: լէ լուիա ա ամ: ա ամ ա: ամ լէ: ա ամ: ալ: լուիա:

Ընդ քեզ է սկիզբն աւուր զօրութեան. ի վայելչութիւն սրբոց քոց յարգանդէ յառաջ քան զարուսեակ ծնայ զքեզ:

# Բ Կ

Երդում Տէր, և ոչ եւըս զըղջասցի, թէ դու ես քահանայ յաւիտեան ըստ կարգին Մելքիսեդեկի, և Տէր ընդ աջմէ քումմէ։

Փառք և երկրպագութիւն Հօր և Որդւոյ և սըրբոյ Հոգւոյն։ Այժմ և միշտ և յաւիտեանըս յաւիտենից. ամէն։

Ալէլուիա։ ալէլուիա։ ալէլու։ իա։ ալէլ։ լուիա։

ԱՒԱԳ ՆՐՆՔՇԱԲԱԹԻ

Կայցէ դըշխոյ ընդ աջմէ քումմէ ի հանդերձս ոսկեհուրըս զարդարեալ և պաճուճեալ։

Լուր դուստր և տես, խոնարհեցո զունկըն քո. մոռա զժողովուրդ քո և զտուն հօր քոյ, զի ցանկացաւ թագաւոր գեղոյ քոյ։

Փ. Տարցին թագաւորի կուսանք ըզհետ նորա. և զընկերս նորա տարցին նըմա։

Ածցին ցընծութեամբ և ուրախութեամբ, և տարցին ի տաճար թագաւորի. և փոխանակ հարց քոց եղիցին որդիք քո։

Փառք և երկրպագութիւն։ Այժմ և միշտ և։

ՅԱՐՈՒԹԵԱՆ

Հաճեցար Տէր ընդ երկիր քո, և դարձուցեր ըզգերութիւնն Յակոբայ։

Թողեր զանիրաւութիւն ժողովրդեան քո, և ծածկեցեր զամենայն մեղս նոցա։

Փ. Օրհնեցէք մանկունք ըզՏէր, և օրհնեցէք զանուն Տեառն։

Եղիցի անուն Տեառն օրհնեալ, յայսըմ հետէ մինչև յաւիտեան։

Փառք և երկրպագութիւն։ Այժմ և միշտ և։

Digitized by Google

# Բ Կ

## ՀԱՄԲԱՐՁՄԱՆ

Որ հովուեսդ իսրայէլի նայեաց, որ առաջնորդես որպէս խաշին Յովսեփու։

Որ նստիս ի քրովբէս, յայտնեաց առաջի Եփրեմի, Բենիամինի և Մանասէի։

Փ. Մեծ եղև մինչև յերկինս ողորմութիւն քո, և մինչև յամպըս ճշմարտութիւն քո։

Բարձրեալ ես դու յերկինս Աստուած, և յամենայն երկրի են փառք քո։

Փառք և երկրպագութիւն։ Այժմ և միշտ և։

## ՀՈԳԻՈՅՆ ՍՐԲՈՅ ԳԱԼՍՏԵԱՆ

Գտի զԴաւիթ ծառայ իմ, և իւղով սրբով իմով օծի զնա։

Ձեռն իմ ընկալցի զնա, և բազուկ իմ զօրացուսցէ զնա։

Փ. Յայտնութիւն բանից քոց լուսաւոր և իմաստուն առնէ զտղայս։

Զբերան իմ բացի, և առի զհոգի. ի պատուիրանս քո փափաքեաց անձն իմ։

Փառք և երկրպագութիւն։ Այժմ և միշտ և։

## ԳԱՑՃԱՌԱԿԵՐԳՈՒԹԵԱՆ ԵՐԿՈՒՇԱԲԱԹԻ

Բարձր արարէք զՏէր Աստուած մեր. երկիր պագէք պատուանդանի ոտից նորա, զի սուրբ է։

Մովսէս և Ահարոն երիցունք նորա, Սամուէլ ընդ այնոսիկ, որ կարդան զանուն նորա։

Փ. Լերինք ցնծացեն առաջի Տեառն, զի գայ և հասեալ է Տէր ի դատել զերկիր։

Դատի զաշխարհս արդարութեամբ և զժողովուրդս իւր ուղղութեամբ։

Փառք և երկրպագութիւն։ Այժմ և միշտ և։

Digitized by Google

# ԲԿ — ԳՋ

## ԽԱՉԻ

Տուր զօրութիւն ծառայի քոյ, կեցո զորդի աղախնոյ քոյ, և արա առ իս նշան բարութեան։

Տեսցեն ատելիք իմ և ամաչեսցեն, զի դու Տէր օգնեցեր ինձ և մխիթարեցեր զիս։

Փ. Ասաց Տէր ցՏէր իմ, Նիստ ընդ աջմէ իմմէ, մինչև եդից զթշնամիս քո պատուանդան ոտից քոց։

Գաւազան զօրութեան առաքեսցէ քեզ Տէր ի Սիոնէ, և տիրեսցես դու ի մէջ թշնամեաց քոց։

Փառք և երկրպագութիւն։ Այժմ և միշտ և։

## ԵԿԵՂԵՑԻՈՅ

Հիմունք Նորա ի լերինս սուրբ Նորա. սիրէ Տէր զդրունս Սիոնի առաւել քան զամենայն յարկս Յակոբայ։

Փառաւորեալ են խօսեցաւ վասըն քո, ահաւադիկ քաղաքդ Աստուծոյ։

Փ. Այսօր է զոր արար Տէր, եկայք ցնծասցուք և ուրախ եղիցուք ի սմա։

Ի Տեառնէ եղև այս, և է սքանչելի առաջի աչաց մերոց։

Փառք և երկրպագութիւն։ Այժմ և միշտ և։

---

# ԳՋ

## ԾՆՆԴԵԱՆ

Ալէլու[illegible]ա: [illegible]ուիա: ալէլու[illegible] [illegible]լու[illegible]ա: [illegible]ա [illegible]ուիա: ալէլու[illegible]ա: [illegible]ա [illegible]ուիա։

Ծանոյց Տէր զփրկութիւն իւր առաջի ազգաց, յայտնեաց զարդարութիւն իւր։

Յիշեաց զողորմութեամբ իւրով զՅակոբ, ճշմարտութեամբ իւրով զտունն Իսրայելի. և տեսին ամենայն ծագք երկրի զփրկութիւն Աստուծոյ մերոյ։

Digitized by Google

# Գ Զ

Ալէլուիա։ ալէլուիա։ ալէլուիա։ ալէլուիա։ ալէլուիա։ ալէլուիա։ ալէլուիա։ ալէլուիա։

Փ. Ցնծեա՛ Տէր զԴաւիթ, և զամենայն հեզութիւն նորա։

Որպէս երդուաւ Տեառն, և ուխտս եդ Աստուծոյ Յակովբայ։

Փառք և երկրպագութիւն Հօր և Որդւոյ և սրբոյ Հոգւոյն։ Այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն. ամէն։

Ալէլուիա ալէլուիա ալէլուիա։ ալէլուիա։

ԱՒԱԳ ԶՈՐԵՔՇԱԲԱԹԻ

Ո՛ր ուտէր զհաց իմ, յաճախեաց առնել ինձ խաբէութիւն։

Այլ դու Տէր ողորմեա ինձ և կանգնեա զիս, և հատուցից նոցա։

Փ. Խորհեցան և խօսեցան ընչարութիւն. և զապիրատութիւն ի բարձունս խորհեցան։

Եդին յերկինս զբերանս իւրեանց, և լեզուս իւրեանց անցին զերկրաւ։

Փառք և երկրպագութիւն։ Այժմ և միշտ և։

ՅԱՐՈՒԹԵԱՆ

Տէր թագաւորեաց, վայելչութիւն զգեցաւ։

Զգեցաւ Տէր զօրութիւն ընդ մէջ իւր ածաւ։

Փ. Գովեա Երուսաղէմ զՏէր, և օրհնեա զԱստուած քո Սիովն։

Զօրացոյց զնիգս դրանց քոց, և օրհնեաց զորդիս քո ի քեզ։

Փառք և երկրպագութիւն։ Այժմ և միշտ և։

Digitized by Google

# Գ Ձ

## ՀԱՄԲԱՐՁՄԱՆ

Ո՜՜ դընէ յամպըս զգընացս իւր, և շըրջի՛ նա ի վերայ թեւո՛ց հողմոց։

Խոստովանութի՜՜ւն և մեծվայելչութիւն զգեցար, արկար ըզլոյս որպէս զօթոց, ձըգեցեր զերկինս որպէս խորան, և արկեր ի վերայ ջուրց ըզվերնայարկս նորա։

Փ. Տէ՜՜ր, խոնարհեցո զերկինս և էջ. մերձեա ի լե-րինս, և ծըխեսցին։

Փայլեա՜՜ զփայլատակունըս քո և խռովեա զնոսա, առաքեա զնետըս քո, և ցըրուեա՛ զնոսա։

Փա՜՜ռք և երկըրպագութիւն։ Ա՜՜յժմ և միշտ և։

## ՀՈԳԻՈՑՆ ՍՐԲՈՑ ԳԱԼՍՏԵԱՆ

Առաքե՜՜ս զՀոգի քո, և ստանաս ըզնոսա. և նորոգես զերեսս երկրի։

Եղիցի՜՜ն փառք Տեառն յաւիտեան. և Տէր ուրախ եղիցի յարարածս իւր։

Փ. Հոգի՜՜ քո բարի առաջնորդեսցէ ինձ ի յերկի՛ր ուղիղ։

Վասն անուա՜՜ն քոյ Տէր կեցուսցես զիս. արդարու-թեամբ քով հանցես ի նեղութենէ՛ զանձն իմ։

Փա՜՜ռք և երկըրպագութիւն։ Ա՜՜յժմ և միշտ և։

## ԳԱՑԾԱՌԱԿԵՐԳՈՒԹԵԱՆ ԵՐԵՔՇԱԲԱԹԻ

Ի ձե՜՜ռս նորա են ամենայն տիեզերք երկրի, և բարձրութիւնք լերանց նո՛րա են։

Նորա՜՜ է ծով և նա արար ըզնա, և զցամաք ձեռք նորա՛ ստեղծին։

Փ. Լերի՜՜նք որպէս մոմ հալեցին յերեսաց Տեառն, յերեսաց Տեառն ամենա՛յն երկիր։

Պատմեցե՜՜ն երկինք զարդարութիւն նորա, տեսին ամենայն ժողովուրդք ըզփա՛ռս նորա։

Փա՜՜ռք և երկըրպագութիւն։ Ա՜՜յժմ և միշտ և։

Digitized by Google

# ԳՉ — ԳԿ

## ԽԱՉԻ

Դու պատրաստեցեր ըզուղղութիւն, ըզիրաւունս և ըզարդարութիւն Յակոբայ դու արարեր։

Բարձր արարէք ըզՏէր Աստուած մեր, երկիր պագէք պատուանդանի ոտից Նորա, զի սուրբ է։

Փ. Յայտնեցին երկինք ըզվայելչութիւն փառաց Նորա, և օրհնութեամբ Նորա լըցան տիեզերք։

Ճառագայթէք որպէս ի լուսոյ հատան ի Նմանէ, և եղջիւրք ի ձեռին Նորա գըտան, և անդ հաստատեցաւ զօրութիւն փառաց Նորա։

Փառք և երկրպագութիւն։ Այժմ և միշտ և։

## ԵԿԵՂԵՑԻՈՅ

Դու Տէր յաւիտեան կաս, և յիշատակ քո ազգէ մինչև յազգ։

Դու յարուցեալ գըթասցիս ի վերայ Սիոնի, ժամանակ գըթալոյ Նորա հասեալ է ժամ։

Փ. Խոստովան եղէց քեզ Տէր բոլորով սըրտիւ իմով, առաջի հրեշտակաց սաղմոս ասացից քեզ։

Զի լուար ըզբանս բերանոյ իմոյ, երկիր պագից ի տաճար սուրբ քո, և խոստովան եղէց անուան քում վասն ողորմութեան և ճըշմարտութեան քո։

Փառք և երկրպագութիւն։ Այժմ և միշտ և։

---

# ԳԿ

## ԾՆՆԴԵԱՆ

Ա[illegible]

Ընդ քեզ է սկիզբն աւուր զօրութեան. ի վայելչութիւն սըրբոց քոց յարգանդէ յառաջ քան զարուսեակ ծընայ ըզքեզ։

Երդուաւ Տէր, և ոչ ևս զըղջասցի, թէ դու ես քա-

Digitized by Google

# Գ Կ

հանայ յաւիտեան ըստ կարգին Մելքիսեդեկի, և Տէր ընդ աջմէ քումմէ ։

Փ. Ալէլուիա ։ ալէլուիա ։ ալէլուիա ։

Տէր ասաց ցիս, Որդի իմ ես դու. և ես այսօր ծընայ ըզքեզ ։

Խընդրեա յինէն, և տաց քեզ զհեթանոսս ի ժառանգութիւն, և իշխանութիւն քեզ ընդ ամենայն ծագս երկրի ։

Փառք և երկրպագութիւն Հօր և Որդւոյ և սըրբոյ Հոգւոյն ։ Այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից ամէն ։

Ալէլուիա ։ ալէլուիա ։ ալէլուիա ։

ԱՒԱԳ ՀԻՆԳՇԱԲԱԹԻ

Լըւացայց սըրբութեամբ ըզձեռս իմ. և շուրջ եղէց ըզսեղանովք քո Տէր ։

Տէր սիրեցի զվայելչութիւն տան քոյ, և զտեղի յարկի փառաց քոց ։

Փ. Պատրաստ արարեր առաջի իմ սեղան, ակն յանդիման նեղչաց իմոց ։

Օծեր իւղով զգլուխ իմ, բաժակ քո որպէս անապակ արբեցոյց զիս ։

Փառք և երկրպագութիւն ։ Այժմ և միշտ և ։

ՑԱՐՈՒԹԵԱՆ

Օրհնեցէք մանկունք ըզՏէր, և օրհնեցէք զանուն Տեառն ։

Եղիցի անուն Տեառն օրհնեալ, յայսըմ հետէ մինչև յաւիտեան ։

Փ. Կենդանի է Տէր, և օրհնեալ է Աստուած. և բարձր եղիցի Աստուած փըրկութեան իմոյ ։

Աստուած է որ խընդրէ զվրէժ իմ և հնազանդ առնէ զժողովուրդս ընդ ինև ։

Փառք և երկրպագութիւն ։ Այժմ և միշտ ։



Digitized by Google

# Գ Կ

### ՀԱՄԲԱՐՁՄԱՆ

Մե՛ծ եղև մինչև յերկինս ողորմութիւն քո, և մինչև յամպըս ճըշմարտութիւն քո։

Բա՛րձրեա՛լ ես դու յերկինս Աստուած, և յամենայն երկրի ե՛ն փառք քո։

Փ. Խոնարհեցո՛յց զերկինս և էջ, և մէգ ի ներքոյ ոտի՛ց Նորա։

Ե՛լ ի քրովբէս և թըռեաւ, սլացաւ նա ի թե՛ւս հողմո՛ց։

Փա՛ռք և երկրպագութիւն։ Ա՛յժմ և միշտ։

### ՀՈԳՒՈՅՆ ՍՐԲՈՅ ԳԱԼՍՏԵԱՆ

Ցա՛յտնութի՛ւն բանից քոց լուսաւոր և իմաստուն առնէ՛ զտղայս։

Զբերա՛ն իմ բացի, և առի զՀոգի, ի պատուիրանըս քո փափաքեա՛ց անձն իմ։

Փ. Ի սաստէ՛ քումմէ Տէր, և ի շընչել հողւոյ բարկո՛ւթեան քո։

Առաքեա՛ց ի բարձանց, և ընկալաւ զիս, ընկալաւ զիս ի ջո՛ւրց բազմա՛ց։

Փա՛ռք և երկրպագութիւն։ Ա՛յժմ և միշտ։

### ԽԱՉԻ

Ա՛սա՛ց Տէր ցըՏէր իմ, Նիստ ընդ աջմէ իմմէ. մինչև եդից ըզթըշնամիս քո պատուանդան ո՛տից քոց։

Գաւազա՛ն զօրութեան առաքեսցէ քեզ Տէր ի Սիոնէ, և տիրեսցես դու ի մէջ թըշնա՛մեաց քոց։

Փ. Նըշանեցա՛ւ առ մեզ լոյս երեսաց քոց, և ետուր ուրախութիւն սրրտի՛ց մերոց։

Ի պըտղո՛յ ցորենոյ գինւոյ ձիթոյ իւրեանց լըցուցե՛ր զնոսա՛։

Փա՛ռք և երկրպագութիւն։ Ա՛յժմ և միշտ։

### ԵԿԵՂԵՑԻՈՅ

Ա՛յսօ՛ր է զոր արար Տէր, եկայք ցընծասցուք և ուրախ եղիցո՛ւք ի սմա։

Digitized by Google

# ԳԿ — ԴՋ

Ի Տէառնէ՛ եղեւ այս, եւ է սքանչելի առաջի աչաց մե-րոց։

Փ. Տէ՛ր ով կացցէ ի խորանի քում, կամ ով բնա-կեսցէ ի լեառն սուրբ քո։

Որ գնայ անբիծ գործէ զարդարութիւն, խօսի զճըշ-մարտութիւն ի սրտի իւրում։

Փառք եւ երկրպագութիւն։ Այժմ եւ միշտ։

## ԴՋ

ԾՆՆԴԵԱՆ

Ալէ... լուիա... լէ... լուիա... լուիա...

Յիշեա՛ Տէ՛ր զԴաւիթ, եւ զամենայն հեզութիւն նորա։

Որպէ՛ս երդուաւ Տեառն, եւ ուխտս եդ Աստուծոյ Յակովբայ։

Փ. Ալէ... լուիա... լէ... լուիա... լուիա...

Տէ՛ր հովուեսցէ զիս, եւ ինձ ինչ ոչ պակասեսցի։

Ի վայրի՛ դալարւոջ անդ բնակեցոյց զիս, եւ առ ջուրս հանգստեան սնոյց զիս։

Փա՛ռք եւ երկրպագութիւն Հօր եւ Որդւոյ եւ սրբոյ Հոգւոյն։ Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից. ամէն։

Ալէ... լուիա... լէ... լուիա... լուիա...

ԱՒԱԳ ՈՒՐԲԱԹՈՒ

Զարթեա՛ւ աղե՛ղըն քո ի նետըս կապարճից քոց. ար-բեցուցեր ըզգետս. ցըրուեցեր զերկիր, եւ դողացուցեր ի սասանութենէ անձրեւի, որ անցանէ ընդ սա։

Digitized by Google

# Դ Ձ

Անդունդք աղաղակեցին մեծապէս. լոյս փայլման արեգականն արգելաւ, և ծագումըն լուսնին դադարեցաւ:

Փ. Մատնեցայ և ոչ ելանէի. աչք իմ տկարացան յաղքատութենէ:

Աղաղակեցի առ Տէր զօրհանապազ, և համբարձի առ քեզ ըզձեռս իմ:

Փառք և երկըրպագութիւն: Այժմ և միշտ և:

ՅԱՐՈՒԹԵԱՆ

Գովեա Երուսաղէմ ըզՏէր, և օրհնեա զԱստուած քո Սիովն:

Զօրացոյց ըզնիգըս դրանց քոց, և օրհնեաց զորդիս քո ի քեզ:

Փ. Ողորմութեամբ Տեառըն լի եղև երկիր. և բանիւ Տեառն երկինք հաստատեցան:

Եւ հոգւով բերանոյ նորա ամենայն զօրութիւնք նոցա:

Փառք և երկըրպագութիւն: Այժմ և միշտ և:

ՀԱՄԲԱՐՁՄԱՆ

Յերեսաց նորա ելցեն հարուածք. և զհետ շաւղաց նորա երթիցեն մեծամեծք ի թըռչնոց:

Լերինք հալեցին, և անտառք վատնեցին. ճանապարհք որք ի սկըզբանէն էին, կուրացին. և ի նմանէ դողացի ամենայն երկիր:

Փ. Համբարձէք իշխանք ըզդրունըս ձեր ի վեր, համբարձցին դրունք յաւիտենից, և մըտցէ թագաւոր փառաց:

Ով է սա թագաւոր փառաց, Տէր հըզօր զօրութեամբ իւրով, Տէր հըզօր ի պատերազմի:

Փառք և երկըրպագութիւն: Այժմ և միշտ և:

ՀՈԳՒՈՅՆ ՍՐԲՈՅ ԳԱԼՍՏԵԱՆ

Որպէս իւղ զի իջանէ ի գլուխ և ի մօրուսն Ահարոնի, և ի մօրուացն իջանէ ի գրապանս ըզգեստու նորա:

# ԴԶ — ԴԿ

Որպէս ցօղ զի ցօղէ ի Հերմոնէ, ի վերայ լերին Սիոնի։
Փ. Ի վայրի դալարւոջ անդ բնակեցոյց զիս, և առ ջուրս հանգստեան սնոյց զիս։
Դարձոյց զանձն իմ առ իս, և առաջնորդեաց ինձ ի ճանապարհս արդարութեան վասն անուան իւրոյ։
Փառք և երկրպագութիւն։ Այժմ և միշտ և։

ԽԱՉԻ

Ցայտնեսցեն երկինք զվայելչութիւն փառաց նորա, և օրհնութեամբ նորա լցան տիեզերք։
Ճառագայթեք որպէս ի լուսոյ հատան ի նմանէ, և եղջիւրք ի ձեռին նորա գտան, և անդ հաստատեցաւ զօրութիւն փառաց նորա։
Փ. Ցուպ քո և գաւազան, նոքա մխիթարեսցեն զիս։
Պատրաստ արարեր առաջի իմ սեղան, ակն յանդիման նեղչաց իմոց։
Փառք և երկրպագութիւն։ Այժմ և միշտ և։

ԵԿԵՂԵՑԻՈՅ

Ուրախ եղէ ես ոյք ասէին ցիս, ի տուն Տեառն երթիցուք մեք։
Հաստատեալ կային ոտք մեր առ դրունս քո Երուսաղէմ։
Փ. Լսել ինձ ըզձայն օրհնութեան քոյ, և պատմել զամենայն ըսքանչելիս քո։
Տէր սիրեցի զվայելչութիւն տան քոյ, և զտեղի յարկի փառաց քոց։
Փառք և երկրպագութիւն։ Այժմ և միշտ և։

---

## ԴԿ

ԾՐԱԳԱԼՈՒՑԻ ԾՆՆԴԵԱՆ

Ալէ։ լո ւիա։ ա ա։ լէ ա։ լո ւիա։ ա լէ։ ա։ լո ւ-իա։

# Դ Կ

Առաքեա՛ց ըզբան իւր և բժշկեաց ըզնոսա, և փըր֊կեաց ըզնոսա յապականութենէ՛ իւրեանց ։

Խոստովա՛ն եղիցին Տեառն ողորմութեանց Նորա, ըզքանչելեաց Նորա որդւո՛ց մարդկան ։

Փ․ Ալէ՝ լուիա՝ ա՝ ալէ՝ ։ լո լուիա՝ ։ ա՝ ։ ա ։ ալէ լո ։ ա ուիա ։

Իջցէ՛ որպէս զանձրև ի վերայ գեղման, որպէս ցօղ զի ցօղէ՛ յերկիր ։

Ծագեսցի՛ յաւուրս Նորա արդարութիւն, բազում խա֊ղաղութիւն մինչև կատարեսցի՛ լուսին ։

Փա՛ռք և երկըրպագութիւն Հօր և Որդւոյ և սըրբո՛յ Հոգւոյն ։ Ա՛յժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենի՛ց․ ամէն ։

Ալէ լուիա ։ ա ։ ա ։ ա ։ ալէ ա ա ։ ա լո ուիա ։

ԾՆՆԴԵԱՆ

Տէ՛ր ասաց ցիս Որդի իմ ես դու, և ես այսօր ծընա՛յ ըզքեզ ։

Խընդրեա՛ յինէն և տաց քեզ զհեթանոսս ի ժառանգու֊թիւն, և իշխանութիւն քեզ ընդ ամենայն ծա՛գս երկրի ։

Փ․ Լո՛ւր դուստր և տես, խոնարհեցո զունկըն քո․ մոռա զժողովուրդ քո և զտուն հօր քոյ, զի ցանկացաւ թագաւոր գե՛ղոյ քոյ ։

Սա՛ ինքն է Տէր քո, երկիր պագցես սըմա․ և դուստըր Ծուրայ երկիր պագցէ սըմա․ և պատարագօք զերեսս սորա պաշտեսցեն մեծամեծք ի ժողո՛վըրդոց ։

Փա՛ռք և երկըրպագութիւն ։ Ա՛յժմ և միշտ ։

ԱՒԱԳ ՇԱԲԱԹՈՒ

Եդի՛ն զիս ի գբի ներքնում, ի խաւարի և ի ստուե՛րս մահու ։

# Դ Կ

Ցի՛ս հաստատեցաւ սըրտմըտութիւն քո. զամենայն զբօսանս քո ածեր ի վե՛րայ իմ։

Փ. Եղէ՛ ես որպէս մարդ առանց օգնականի, և ի մե֊ռեա՛լս ազատ։

Որպէ՛ս վիրաւորս, որք ննջեն ի գերե՛զմանի։

Փա՛ռք և երկըրպագութիւն։ Ա՛յժմ և միշտ։

ՅԱՐՈՒԹԵԱՆ

Կենդանի՛ է Տէր, և օրհնեալ է Աստուած. և բարձր եղիցի Աստուած փրկութեա՛ն իմոյ։

Աստուա՛ծ է, որ խընդրէ զվըրէժ իմ, և հնազանդ առնէ զժողովուրդս ը՛նդ ինև։

Փ. Ծա՛փս հարէք ամենայն հեթանոսք. աղաղակեցէք առ Աստուած ի ձայն ցը՛նծութեան։

Տէ՛ր բարձրեալ և ահարկու, թագաւոր մեծ ի վերայ ամենա՛յն երկրի։

Փա՛ռք և երկըրպագութիւն։ Ա՛յժմ և միշտ։

ՀԱՄԲԱՐՁՄԱՆ

Խոնարհեցո՛յց զերկինս և էջ, և մէգ ի ներքոյ ոտի՛ց նորա։

Ե՛լ ի քրովբէս և թըռեաւ, սլացաւ նա ի թե՛ւս հողմոց։

Փ. Համբարձա՛ւ Աստուած օրհնութեամբ, և Տէր մեր ձայնի՛ւ փողոյ։

Սաղմո՛ս ասացէք Աստուծոյ մերում, սաղմոս ասացէք թագաւորին մերում, սաղմոս ա՛սացէք։

Փա՛ռք և երկըրպագութիւն։ Ա՛յժմ և միշտ։

ՀՈԳՒՈՅՆ ՍՐԲՈՅ ԳԱԼՍՏԵԱՆ

Ի սաստէ՛ քումմէ Տէր, և ի շընչել հողւոյ բարկո՛ւթեանքո։

Առաքեա՛ց ի բարձանց, և ընկալաւ զիս, ընկալաւ զիս ի ջո՛ւրց բազմաց։

Փ. Սի՛րտ սուրբ հաստատեա յիս Աստուած. և հոգի ուղիղ նորոգեա ի փորի՛ իմում։

Digitized by Google

# Դ Կ

Մի՛ ընկենուր զիս Տէր յերեսաց քոց և զՀոգի քո սուրբ մի՛ հանե՛ր յինէն ։

Փա՛ռք և երկրպագութիւն ։ Ա՜յժմ և միշտ ։

## Խ Ա Զ Ի

Նշանեցա՛ւ առ մեզ լոյս երեսաց քոց, և ետուր ուրախութիւն սրտի՛ց մերոց ։

Ի պտղո՛յ ցորենոյ գինւոյ ձիթոյ իւրեանց լցուցե՛ր զնոսա ։

Փ. Նե՛տք քո սրբեալ են հզօր, ժողովուրդք ի ներքոյ քոյ անկցին, ի սիրտս թշնամեաց թագա՛ւորի ։

Աթո՛ռ քո Աստուած յաւիտեանս յաւիտենից, գաւազան ուղղութեան գաւազան արքայո՛ւթեան քոյ ։

Փա՛ռք և երկրպագութիւն։ Ա՜յժմ և միշտ ։

## Ծ Կ Ծ Ղ Ծ Ց Ի Ո Ց

Տէ՛ր ով կացցէ ի խորանի քում, կամ ով բնակեսցէ ի լեառը՛ն սուրբ քո ։

Որ գնա՛յ անբիծ, գործէ զարդարութիւն, խօսի զճշմարտութիւն ի սրտի՛ իւրում ։

Փ. Մե՛ծ է Տէր և օրհնեալ է յոյժ, ի քաղաք Աստուծոյ մերոյ. ի լեառըն սո՛ւրբ նորա ։

Հաստարմա՛տ ցնծութեամբ ցնծացէ ամենայն երկիր, լերինք Սիովնի, կողմանք հիւսիսոյ, քաղաք թագաւորի՛ն մեծի ։

Փա՛ռք և երկրպագութիւն ։ Ա՜յժմ և միշտ ։



Digitized by Google

## ԹԱԳԱՒՈՐՔ ՄԱՐՏԻՐՈՍԱՑ

### ԱՁ

ԱՁ. Թագաւոր յաւիտեա մ : ս ս : ս մ ն ։

Բարեխօսութեամբ սրբոց մարտիրո-սացն : ա ղա չե մ մ : ս ծ օծ մ մք : ը մ գ-քեզ : Թողութիւն շնորհեա մ յանցանաց մերոց : բարե բա մ մ : ս ծ օծ մր Քրի ստոս ։

ՍՂ. Մերձ է Տէր առ այնոսիկ որ մաշեալ են սրտիւք և զխոնարհս հոգւով կեցուցանէ : բազում նեղութիւնք են արդարոց յամենայնէ փրկէ զնոսա Տէր. և պահէ զամենայն ոսկերս նոցա և մի ի նոցանէ ոչ կոտրե-ցէ : Թողութիւն ։

Փխ. Որ յաղթող զօրութեամբ ի հանդէս ճըգ-նաւոր : րա ս կա ն : ա նա րա տ պահե ց ս-ցեր : զխոստովանող վըկայս քո Քրիստոս Աստուած : ա ս ծ ք ւր մեզ : օգնութի մ ւն ի նեղու-թեան մերում : բարեխօսութեամբ սրբոց մարտիրո-սա մ ս ծ ցն ե ւ ը կե ա մ մ : մ ս ա : ցո ։

### ԱԿ

ԴԿ. Զողորմութիւն քո : Տէ ս օծ ս մ ր : ա րա մ-ի մեզ : Եւ բարեխօսութեամբ սրբոց մար-տիրոսաց : մի կորուսաներ ը զմեզ : Ե րը րո ր-դու թի : ւն սո ս օծ ս մ ւրք : ո ղո րըմեա : մ : մ մեզ ։

ՍՂ. Փրկութիւն արդարոց ի Տեառնէ է վերա-կացու է նոցա ի ժամանակս նեղութեան : օգնեացէ նոցա Տէր և փրկեսցէ զնոսա. ապրեցուսցէ ի մեղաւորաց և կեցուսցէ զնոսա զի յուսացան ի նա ծ ս մ : Ե ւ բարե ։

Փխ. Որք ըզտանջանս եւ ըզմահ վասըն քո

Digitized by Google

յանձն առին: Եւ հեղին զարիւնս իւրեանց վասն անուանն քում սրբոյ: Բարեխօսութեամբ սոցա: մի- կորուսաներ ըզգըմեւձզ: Եւ ըրըրո րդութիւն: ւն սուս օթսմուրբ ողորմեաւձ: մեղ:

## ԲՁ

ԱՁ. Բարեխօսութեամբ սը: րբոց մարտի- րոսացն: ‖ պարգեւեաւ: օծ մեղ Տէր: անձնուլ մաւ սն եւ բաժին ընդ հրաշիրբեաւ լսն ի կոչումն: արքայութեաւ: օծ ննդ եւ րկնից:

ՍԴ. Աքանչելի է Աստուած ի վերայ սրբոց իւրոց Աստուած Իսրայէլի: Նա տացէ զօրութիւն հաստա- տութեան ժողովրդեան իւրոյ օրհնեալ է Աստը- ւած: պարգեւեաւ:

Փխ. Մարտիրոսք երանեալք եւ փառաւորեալք: որք բազում տանջանացըն համբերեցէք: դուք ըզլոյսըն կենաց ըզգեցեալ ունիք: Եւ առ Քրիս- տոս վասըն մեր: բարեխօ: սեցէք:

## ԲԿ

ԱՁ. Դու ես Քրիստոս աղբիւր կենաց: բըղխումն ողորմութեան: ‖ շնորհեցեր սըրբոց մարտիրոսացն յաղթող ըզնահատակութիւն: համբերել ըզխաւարն եւ լուսաւորել զանձինս: ւծ: օծ ննդ ս մեր:

ՍԴ. Աստուած փառաւորեալ է ի խորհուրդս սրբոց իւրոց, մեծ և ահաւոր ի վերայ այնոցիկ որ շուրջ են ըզ- նովաւ: Տէր Աստուած զօրութեանց ո՞ նման է քեզ. հզօր ես դու Տէր և ճըշմարտութիւն քո շուրջ է ըզքեւ: շնորհեցեր:

Փխ. Որ շնորհօք սուրբ Հոգւոյն յաղթեցէք թըշ-

նամւոյն: Երանեալ սուրբ վըկայք Քրիստոսի: վասըն ձեր տօնողացս հայցեցէք յԱստուծոյ: զթողութիւն մեղաց։

Փխ. Որ պըսակդ էք պարծանաց ամենայն առաքելեաց: Նախաշաւիղ եւ առաջնորդ կենացըն յաւիտենից: ով սուրբ վըկայք: սըրբ պըսակիչըն սըրբոց եւ վասըն մեր բարեխօսեցէք. շնորհելով զողորմութիւն յանըսպառ յաղբերըն: կենացըն յաւիտենից։

## ԳՁ. ԳԿ

ԴԿ. Թագաւոր սուրբ ըյ յաւիտեան ... ։ Ըզգեցընութիւն սըրբոց մարտիրոսացն: բարեխօս ... անիմք առ քեզ Քրիստոս: Եւ աղաչեմըք ... ։ շնորհեա զթողութիւն յանցանաց մերոց: եւ ի կեանսըդ յաւիտենից: Նորոգեա ... ։

ԳՁ. ՍՂ. Լոյս ծագեաց արդարոց ուղղոց սըրտիւք եղեւ ուրախութի ... : ուրախ եղերուք արդարք ի Տէր. և խոստովան եղերուք յիշատակի սրբութեան նորա ... : Եւ աղաչեմըք։

ԳԿ. ՍՂ. Պատուական է առաջի Տեառն մահ սըրբոց իւրոց ո Տէր ես ծառայ քո եմ ծառայ և որդի աղախնոյ քո: հատեր ըզկապանս իմ քեզ մատուցից պատարագս օրհնութեան և զանուն Տեառըն կարդացից: Եւ աղաչեմըք։

Փխ. Հանդիսացեալք ի մարտըն պատերազմի յաղթող գըտեալք սուրբ ը վը ... կայք: քանզի ճանապարհ հորդեցէք ը մե ...։

րինս զօրութեամբ իւրով և զգեցեալ է զօրու-
թիւն : և կե ։

Փխ. Լոյս աղաչանաց մերոց : Տէ ... մարդասէր և գթած ... մեզ ։

Բ. Մի ... զէ ... անուանս աշնն : ... ինձ : ... ։

ՍՂ. Մի ընկեսցես զիս Տէր յերեսաց քոց և զհոգի քո սուրբ մի հաներ յինէն. այլ տուր ինձ ցըն-ծութիւն փրկութեան և հոգւով պետութեան քո հաս-տատեա զիս : ա ։

Փխ. Մի անտես առներ զիս Տէր Աստուած փրկիչ իմ: այլ շնորհեա ինձ թողութիւն : բազ-մագութ : մարդասէր և ողորմած : ... ։

Բ. Երկրպագեմք և երկիր պագանեմք ընդէն Տէր: արարածք ամենայն : քեզ երկիր պագանեն : և հրեշտակք ի բարձունս անդադար կան և սեն : ա-ղօրմեա զմեզ սուրբդ : մի կորուսաներ ։

ՍՂ. Երկինք երկնից ջուրք որ ի վերոյ քան զերկինս օրհնեսցեն զանուն Տեառն : զի նա ասաց և եղեն հրամայեաց և հաստատեցան : Եւ հրեշ ։

Փխ. Երկինք և երկիր համանման ընդ քեզ գովեն : թագաւոր փառաց : նորոգեալք և քերովբէք ի խոնարհ ոտնեդրով : ընդ սերովբէիւք : և միաձայն բարբառով անդադար և սեն : սուրբ սուրբ : սուրբ ես Տէր զօրութեանց ։

### ԵՐԵՔՇԱԲԱԹԻ

ԱՁ. Թ. Երկայնամիտ ես Տէր: առ ամենեսեան: ‖ եւ գթա Տէր ի վերայ մեր որպէս եւ ը յաւամ զամանակին: Փըրկեա: եցու ը կե:

ՍՂ. Երկայնամիտ բազումողորմ և ճշմարիտ նայեաց առ իս եւ ողորմեա ինձ: տուր զօրութիւն ծառայի քո կեցո զորդի աղախնոյ քո և արա առ իս նշան բարութեան: եւ գթա:

Փխ. Տէր որ գթացար յաւանդակըն խաչակից լինել քեզ: եւ մաքրեցեր զանօրէնութիւն յանցանաց նորա: յաղբերէ կողի քո: գթա և յիս ի մեղաւորս որ ծառայս եմ առ քեզ: եւ փափագեմ ի գալուստն քո: որպէս ըզմի ի յեղջերուաց: ի յաղբերըս ջուրց:

Թ. Մարտեաւ ընդ իս թշնամին: հանապազ զիս կամի կորուսանել: ‖ այլ դու Տէր իմ այց արա: մոլորեալ ոչխարիս եւ կեցո:

ՍՂ. Մարտեան ընդ իս ի տարապարտուց և փոխանակ սիրոյ իմոյ մատնէին զիս այլ ես յաղօթս կայի: համուցին ինձ չար փոխանակ բարւոյ ատելութիւն փոխանակ սիրոյ իմոյ: այլ դու:

Փխ. Որ հովիւդ ես հօտից բանաւոր կենդանեաց: տուր ինձ յոյս կենաց: ապաշխարութեան: եւ դարձո զմոլորեալս ի հօտ քո Քրիստոս եւ ը կեցո:

Թ. Մեղայ եւ աղաչեմ ըզքեզ: թողութիւն [illegible] շընորհեա մեղաց իմոց: ‖ քաւիչ իմ լեր

քո գթութեամբդ: որ միայնդ ես փրկիչ եւ կեւՃւՃ: ցո ։

Սղ. Մեղայ Տէր մեղայ և զանօրէնութիւնս իմ ես ինձէն գիտեմ: աղաչեմ և խնդրեմ ի քէն Թող ինձ Տէր Թող ինձ և մի կորուսաներ զիս ըստ անօրէնութեան իմոյ: քաւիչ ։

Փխ. Մեղայ քեզ Տէր մեղայ քեզ Տէր: մեղայ եւ քան զաւազ ծովու բազում են յանցանք իմ: պատրանք աշխարհիս խաբեցին զիս: եւ եղէ անպիտան ի կենաց յուսոյդ: այլ դու անոխակալ և անյիշաչար փրկիչ: խնայեա ի մեղուցեալ ծառայս եւ ըկեմմւՃ: ցո ։

ՉՈՐՆՔՇԱԲԱԹԻ

ԱՁ. Թ. Տէր ի մ: բազում են: անօրէնութիւնք աւՁնձի: ն իմ մոյ: Ոչ յիշեցես զահեղ ընդդատաւՃս: տանս նը ս քո: արդ անկեալ ընդքեզ աղաչեմ: շնորհեա ինձ ապաշխարութիւն Տէր: եւ ոս: զօրհնեմ ։

Սղ. Անօրէնութիւնք իմ բարձրացան քան զգլուխ իմ և որպէս բեռըն ծանըր ծանրացան ի վերայ իմ: նեխեցան և փտեցան վէրք իմ յերեսաց անզգամութեան իմոյ: ոչ յի ։

Փխ. Պաղատանս մատուցանեմք քեզ Հայր երկնաւոր. մի անտես առներ զաղաչանըս մեր: այլ անցո զցասումըն քո ի մէնջ: եւ յիշեա զի պատկեր եմք բարերարութեանդ ։



Digitized by Google

ՀԻՆԳՇԱԲԱԹԻ

ԱՁ. Թ. Ապաշխարութեամ ուն: ա ս: րստամ ս: աւազան ը լինի եւ ըն ամ նայ: զբանզըմոմս: ս ութի ս ուն ը մե ղաց: Սովաւ շնորհեա: յառաջ քան ըզ վախճան: զքաւութիւն եւ ըզըմեծ: քո զողո ու: ս ս: ըզողոմութիւն:

ՍՂ. Ծարաւի է անձն իմ առ քեզ Աստուած հզօր և կենդանի երբ եկից երևեցայց երեսացդ Աստուծոյ: Եղեն ինձ արտասուք իմ կերակուր ի տուէ և ի գիշերի. և այն զի ասէին ցիս զօրհանապազ թէ ուր է Աստուած քո: ամֆաս:

Փխ. Ցորժամ գաս փառօք հօր յահեղին աւուրն: ի դատել զերկիր: Եւ զօրացն սարսափմամբ Երկրածինս ամենայն: ի յահէ քո ամէ: ի նըստել քո յաթոռն դատաւոր ահեղ: Եւ յայտնարկել քո յարարածս: յիշեա եւ զիս ըզբարեգործեալս: որ ընկղմեալ եմ յանցանօք բանաւորկութիւն խաբմամբ: Եւ հայցեմ զաւազակին Տէր եւ զիս յիշեա: որ մխալ յեղ եմս: Փրկիչ:

Թ. Զիս որ ի: նախնիս: ց աշխարհի ան կեալ ծե ն: մե ղք իմ: Նմանահանգիս ս: ց ստ ապաշխարութեան: շընորհեամ ի նձ: բաց զո: ծ ւմ: ոց ղո րմ: եւ ըկե: մ: ւ: ս ս: ծ ցո:

ՍՂ. Կեցո զիս Աստուած զի հասին ջուրք յանձն իմ: ընկղմեցայ ես ի խորս անդընդոց ուր ոչ գոյ ինձ հանգիստ: Նման հան:

Փխ. Նախանձեալ բարեգործութ առ քեզ ապաւինիմ

Փխ. ՆՆՋՑ. Օրհնեալ ես Տէր: եւ փառաւո-րեալ է: քո անուանդ մարդասիրութեանդ: զաղա-չանս մեր: քեզ մատուցանեմք որ: Թագաւորդ ես յաւիտենից: զննջեցեալսն մեր: արժանի արա Տէր: ընդունել ի կեանսն յաւիտենից ։

Բ. Արտասուօք իմ: շնորհեա ի յապաշխարու-թեան Տէ ր ը զի: ‖ լուացից ըզմեղս: ա նձի ս: ն: ի մո յ սրտէս: պտղունս ծս: կն: աղաչեմ եւ: կե ցո ։

ՍՂ. Վաստակեցայ ես ի հեծութեան իմում լուացի զամենայն գիշեր ըզմահիճս ի ս մ: եւ արտասուօք իմովք զանկողինս իմ թացից ծս: զի լուացից ։

Փխ. Որ աղբիւրդ ես անապական: Քրիստոս Աստուած: զվիրաւորեալ անձն իմ ի մեղաց: բժշկեա Տէր: բղխմամբ արտասուաց եւ ը կե ցո ։

Բ. Զմոլորեալ ծառայս խնդրեա Տէր: ‖ եւ մի դատապարտեր զիս: ի յաւուրըն այցելութեան քո. մաղ-մաղ-մաղ: ո րդա: սէր ։

ՍՂ. Կեցցէ անձն իմ օրհնեսցէ զքեզ և իրաւունք քո: օգնեսցեն ինձ: մոլորեցայ ես որպէս զոչխար կորուսեալ խնդրեա զծառայս քո զի զպատուիրանս քո ես ոչ մոռացայ ծս: եւ մի ։

Փխ. Որ մոլորեցայ ի հօտէ քումմէ: հովիւ ծւ բարի: խնդրեա: զի ես ըզմոլորեալս: եւ արժանաւորեա խառնել ի հօտ քո Քրիս-տոս եւ ը կե ցո ։

Digitized by Google

## ՄԱՂԹԱՆՔ

### Դկ. Բկ.

Սաղմոսիւք և օրհնութեամբ և երգօք հոգևորօք անդադար փառաւորեմք զՀայր և զՈրդի և զսուրբ Հոգին, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

### Աձ. Գձ.

Ի գիշերի և ի տուընջեան և յամենայն ժամու անդադար փառաւորեմք զՀայր և զՈրդի և զսուրբ Հոգին. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

### Ակ. Գկ.

Յերգս օրհնութեան և ի ձայն սաղմոսաց անդադար փառաւորեմք զՀայր և զՈրդի և զսուրբ Հոգին, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

### Բձ. Գձ.

Գոհութեամբ և ճշմարիտ խոստովանութեամբ անդադար փառաւորեմք զՀայր և զՈրդի և զսուրբ Հոգին, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

Օրհնեալ Տէր մեր։ Հայր մեր որ յերկինս։



Digitized by Google

## ԿԱՐԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ

# ՀԱՍԱՐԱԿԱՑ ԱՂՕԹԻՑ

## ԱՌԱՒՕՏՈՒ ԺԱՄՈՒ

### ՈՐ ԿԱՏԱՐԻ Ի ԴԷՄՍ ՈՐԴԻՈՑՆ ԱՍՏՈՒԾՈՅ

### ՈՐ ԵՐԵՒԵՑԱՒ ԻՒՂԱԲԵՐԻՑՆ



*Լցաք առաւօտու ողորմութեամբ քով, ցնծացաք և ուրախ եղաք զամենայն աւուրս կենաց մերոց։*

*Ուրախ եղաք փոխանակ աւուրցն յորս խոնարհ արարեր զմեզ, և ամացն յորս տեսաք զչարչարանս։*

*Հայեաց Տէր ի ծառայս քո և ի գործս ձեռաց քոց, և առաջնորդեա որդւոց նոցա. եղիցի լոյս Տեառն Աստուծոյ ի վերայ մեր։*

*Զգործս՛ ձեռաց մերոց ուղիղ արա ի մեզ Տէր, և զգործս ձեռաց մերոց աջողեա մեզ։*

*Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն։ — Այժմ և միշտ։*

*Եւ ևս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք. ընկալ կեցո և ողորմեա։*

*Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ, այժմ և միշտ։*

### Օրհնութիւն երից մանկանցն Դանիէլի։

*Օրհնեալ ես Տէր Աստուած հարցն մերոց, օրհնեալ փառաւորեալ անուն քո յաւիտեան։*

*Ցիրաւունս անցուցեր զայս ամենայն ընդ մեզ. արդար ես դու Տէր, և ամենայն գործք քո ճշմարիտ են։*

*Ճանապարհք քո ուղիղ են, և ամենայն դատաստանք քո արդար են։*

*Դատաստան արդարութեան ածեր ի վերայ մեր ըստ ամենայնի, և զոր ինչ ածեր ի վերայ մեր, և քաղաքի սրբոյ հարցն մերոց Երուսաղեմի։*

Digitized by Google

Արդարութեամբ և յիրաւի ածեր զայս ամենայն ի վերայ մեր վասն մեղաց մերոց։

Անօրինեցաք և յանցեաք ապստամբ լինել ի քէն. մեղաք յամենայնի և պատուիրանաց քոց մեք ոչ անսացաք։

Ոչ պահեցաք և ոչ արարաք որպէս պատուիրեցեր դու մեզ, զի զբարիս գտցուք մեք ի քէն։

Արդ զամենայն զոր արարեր և զոր ինչ ածեր ի վերայ մեր, արդար դատաստանաւ արարեր։

Մատնեցեր զմեզ ի ձեռս թշնամեաց մերոց անօրինաց խստաց և ապստամբողաց։

Ի ձեռս թագաւորի անօրինի և չարի քան զամենայն երկիր մատնեցեր զմեզ։

Եւ արդ ոչ գոյ մեզ ժամ բանալ զբերանս մեր, զի յամօթ և նախատինք եղաք ծառայից քոց և պաշտօնէից։

Այլ մի՛ մատներ զմեզ ի սպառ վասն անուան քոյ. մի՛ ցրեր զուխտս քո. և մի՛ ի բացեայ առներ զողորմութիւնս քո ի մէնջ։

Վասն Աբրահամու սիրելւոյ քոյ, Իսահակայ ծառայի քոյ և Իսրայելի սրբոյ քոյ։

Խոստացար նոցա և ասացեր բազմացուցից, զզաւակ ձեր՝ որպէս զաստեղս երկնից բազմութեամբ, և որպէս զաւազ առ ափն ծովու։

Եւ արդ Տէր նուաղեցաք մեք քան զամենայն ազգս. և եմք տառապեալք յամենայն երկրի այսօր վասն մեղաց մերոց։

Ոչ գոյ ի ժամանակիս յայսմիկ իշխան, մարգարէ և առաջնորդ, ոչ ողջակէզք պատարագաց և ոչ խունկք օրինաց, և ոչ տեղի պատարագս մատուցանելոյ առաջի քոյ և զողորմութիւն գտանել ի քէն։

Այլ անձամբք խոնարհեալք և հոգւովք տառապանաց՝ ընդունելի լիցուք մեք որպէս զողջակէզս խոյոց և զուարակաց, և որպէս բիւրաւորս գառանց պարարտաց։

Այնպէս ընդունելի լիցին պատարագք մեր այսօր առաջի քոյ, զի կատարեալ գտցուք զկնի քոյ, և չիք ամօթ յուսացելոցս ի քեզ։

Եւ արդ գամք զհետ քոյ ամենայն սրտիւք մերովք. երկնչիմք ի քէն, և խնդրեմք զերեսս քո Տէր, մի՛ յամօթ առներ զմեզ։

Այլ արա առ մեզ ըստ հեզութեան քում և ըստ բա-

Digitized by Google

զում ողորմութեան քում, փրկեա զմեզ վասն սքանչելեաց քոց Տէր. և փառաւորեսցի անուն քո յաւիտեան։

Ցամօք լիցին ամենեքեան, որք չարչարեն զծառայս քո. ամաչեցեալ լիցին բռնութիւնք նոցա, և ամենայն զօրութիւնք նոցա խորտակեսցին։

Եւ ծանիցեն, զի դու ես Տէր Աստուած միայն՝ որ փառաւորեալդ ես ի վերայ ամենայն տիեզերաց։

Օրհնեալ ես դու Տէր Աստուած հարցն մերոց, գովեալ և առաւել բարձրացեալ յաւիտեան։

Եւ օրհնեալ է անուն սուրբ փառաց քոց. գովեալ և առաւել։

Օրհնեալ ես ի տաճարի փառաց սրբութեան քոյ. գով։

Օրհնեալ ես ի վերայ աթոռոյ արքայութեան քոյ. գով։

Օրհնեալ ես որ նստիս ի քրովբէս, և հայիս յանդունդս. գով։

Օրհնեալ ես ի վերայ հաստատութեան երկնից. գով։

Օրհնեցէք ամենայն գործք Տեառն զՏէր. օրհնեցէք և բարձր արարէք զնա յաւիտեան։

Օրհնեցէք երկինք զՏէր. օրհնեցէք և բարձր արարէք զնա յաւիտեան։

Օրհնեցէք հրեշտակք Տեառն և ջուրք որ ի վերոյ երկնից զՏէր. օրհն։

Օրհնեցէք զօրութիւնք Տեառն արեգակն և լուսին զՏէր. օրհն։

Օրհնեցէք աստեղք երկնից՝ անձրևք և ցօղք զՏէր. օրհն։

Օրհնեցէք ամենայն հողմք, հուր և ջեր զՏէր. օրհն։

Օրհնեցէք ցուրտ և տօթ, ցօղ և ձիւնաբեր զՏէր. օրհն։

Օրհնեցէք սառն և պարզ, եղեամն և ձիւն զՏէր. օրհն։

Օրհնեցէք տիւք և գիշերք, լոյս և խաւար զՏէր. օրհն։

Օրհնեցէք ամպք և փայլատակունք և երկիր զՏէր. օրհն։

Օրհնեցէք լերինք, բլուրք և ամենայն բոյսք երկրի զՏէր. օրհն։

Օրհնեցէք աղբիւրք, ծովք և գետք զՏէր. օրհն։

Օրհնեցէք կէտք և ամենայն կայտառք որք ի ջուրս, և թռչունք երկնից զՏէր. օրհն։

Օրհնեցէք գազանք և անասունք և որդիք մարդկան զՏէր. օրհն։

Օրհնեսցէ Իսրայէլ զՏէր. օրհնեսցէ և բարձր արասցէ զնա յաւիտեան։

Օրհնեցէք քահանայք զՏէր. օրհն:
Օրհնեցէք ծառայք Տեառն զՏէր. օրհն:
Օրհնեցէք անձինք և շունչք արդարոց զՏէր. օրհն:
Օրհնեցէք սուրբք և խոնարհք սրտիւք զՏէր. օրհն:
Օրհնեցէք Անանիա, Ազարիա և Միսայէլ զՏէր. օրհն:
Փառք Հօր: Այժմ և միշտ:

ՄԱՂԹԱՆՔ

Օրհնեցէք զարարիչն արարածոց, զՏէրն տերանց, զԹագաւորն Թագաւորաց, զԱստուածն աստուծոց: Օրհնեցէք, գովեցէք, բարեբանեցէք. զի քաղցր է, զի յաւիտեան է ողորմութիւն Նորա:

Եւ ապա ասեն զՀարցն ըստ պաշտաման:

ՔԱՐՈԶ զկնի Հարցին:

Եկեալքս ամենեքեան ի սուրբ կաթուղիկէ և առաքելական եկեղեցի, աղաչեսցուք զմիածին Որդին Աստուծոյ, զՏէրն մեր և զփրկիչն Յիսուս Քրիստոս. որ էջ փառօք Հօր ի մէջ հնոցին, և փրկեաց զերիս մանկունս ի քաղդէացւոց անտի: Լուսաւոր և սուրբ պահեսցէ զմիտս մեր, զի մի՛ երբեք խաբեսցուք մեք ի մեղաց և ի ցանկութենէ աշխարհի: Այլ արժանի եղիցուք պահել զպատուիրանս Նորա, առնուլ զպսակն լուսոյ և կենաց ի յանձինս մեր, զոր խոստացաւ սիրելեաց իւրոց ճշմարիտն Աստուած: Յիսուս Քրիստոս Տէր մեր, կեցո և ողորմեա:
Տէր ողորմեա, Տէր ողորմեա, Տէր ողորմեա:

ՄԱՂԹԱՆՔ

Ի կիւրակէի և յայլ տէրունական տօնս:

Հզօր, յաղթող, ազանչելագործ, սուրբ, մեծի (յարութեանն) Քրիստոսի Աստուծոյ մերոյ վայելէ փառք իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և:

ՄԱՂԹԱՆՔ ՄԱՐՏԻՐՈՍԱՑ

Յօղեա Տէր զցօղ բարերար ողորմութեան քոյ ի մեղուցեալ անձինս մեր. շիջո զբոց հնոցի յանցանաց մերոց, փրկեա զմեզ յաւիտենական ի հրոյն: Արա արժանի ընդ

երիս սուրբ մանկունսն, և ընդ երանելի սուրբ վկայսն՝ օրհնել զքեզ և գովել. քեզ գոհութիւն և փառս մատուցանել Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ, այժմ և միշտ։

## ՄԱՂԹԱՆՔ ԳԱՀՈՅ

Յօղեա Տէր զցօղ քաղցրաբար ողորմութեան քոյ ի մեղուցեալ անձինս մեր. շիջո զբոց հնոցի յանցանաց մերոց, փրկեա զմեզ յաւիտենական ի հրոյն։ Արա արժանի ընդ երիս սուրբ մանկունսն և ընդ երանելի սուրբ վկայսն օրհնել զքեզ՝ գովել և ասել, Աստուած քաւեա զիս զմեղաւորս, Աստուած քաւեա զիս զմեղաւորս, Աստուած քաւեա զիս զմեղաւորս և կեցո։

## ՆՐԳ ՄԱՐԻԱՄՈՒ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻՆ.

Մեծացուսցէ անձն իմ զՏէր, և ցնծասցէ հոգի իմ Աստուծով փրկչաւ իմով։

Այց արար ի վերայ խոնարհութեան աղախնոյ իւրոյ. այսուհետև երանիցեն ինձ ամենայն ազգք։

Արար ընդ իս մեծամեծս հզօրն. և սուրբ է անուն նորա։

Ողորմութիւն արար ազգաց յազգս երկիւղածաց իւրոց, և արար զզօրութիւն բազկաւ իւրով։

Ցրուեաց զամբարտաւանս ի մտաց սրտից, և քակեաց զհզօրս յաթոռոց։

Զխոնարհս բարձրացոյց, զկարօտս ելից բարութեամբ, և զմեծատունս արձակեաց ունայնս։

Պաշտպանեաց Իսրայելի ծառայի իւրոյ՝ յիշելով զողորմութիւն իւր։

Որպէս խօսեցաւ առ հարս մեր՝ ընդ Աբրահամու և զաւակի նորա յաւիտեան։

## Օրհնութիւն Զաքարիայի՝ հօրն Յովհաննու Մկրտչի։

Օրհնեալ Տէր Աստուած Իսրայելի՝ որ յայց ել և արար փրկութիւն ժողովրդեան իւրոյ։

Յարոյց մեզ զեղջիւր փրկութեան ի տանէ Դաւթի ծառայի իւրոյ, որպէս խօսեցաւ բերանոց սրբոցն, որք յաւիտենից մարգարէքն էին։

Փրկութիւն ի թշնամեաց մերոց և ի ձեռաց ամենայն ատելեաց մերոց։

Առնել ողորմութիւն առ հարսն մեր, և յիշել զկտակարանս սրբութեան իւրոյ։

Digitized by Google

Ջերդումն զոր երդուաւ Աբրահամու հօր մերոյ, տալ մեզ առանց երկիւղի զփրկութիւն ի թշնամեաց մերոց։

Պաշտել զնա սրբութեամբ և արդարութեամբ առաջի նորա զամենայն աւուրս կենաց մերոց։

Եւ դու մանուկ, մարգարէ բարձրելոյն կոչեսջիր. գնասցես առաջի Տեառն պատրաստել զճանապարհս նորա։

Տալ զգիտութիւն փրկութեան ժողովրդեան իւրոյ ի թողութիւն ամենայն մեղաց մերոց։

Վասն գթոյ ողորմութեան Տեառն Աստուծոյ մերոյ, որով երևեցաւ մեզ արեգակն ի բարձանց՝ լուսաւոր առնել զխաւար մեր։

Ծագել զլոյս ի վերայ այսոցիկ՝ որք նստէաք ի խաւարի և ի ստուերս մահու. ուղղել զոտս մեր ի ճանապարհս խաղաղութեան։

Աղօթէ ծերունայն Սիմէոնի ։

Արդ արձակեա զծառայս քո Տէր ըստ բանի քում ի խաղաղութիւն. զի տեսին աչք իմ զփրկութիւն քո, զոր պատրաստեցեր առաջի ամենայն ժողովրդոց։

Լոյս ի յայտնութիւն հեթանոսաց, և փառք ժողովրդեան քում Իսրայելի։

Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն։ Այժմ և միշտ։

Եւ տայ առ Մեծաւորացն ըստ պատշաճի։

ՔԱՐՈԶ ասէ Մեծաւորացն ։

Սուրբ զԱստուածածինն՝ և զամենայն սուրբս բարեխօս արասցուք առ Հայր ի յերկինս . զի կամեցեալ ողորմեսցի՝ և գթացեալ կեցուսցէ զարարածս իւր։ Ամենակալ Տէր Աստուած մեր, կեցո և ողորմեա։

ԱՂՕԹՔ ծաղկաբերաց և պտղոց ։

Ընկալ Տէր զաղաչանս մեր բարեխօսութեամբ սուրբ Աստուածածնին անարատ ծնողի միածնի Որդւոյ քոյ, և աղաչանօք ամենայն սրբոց քոց, (և որոց այսօր է յիշատակ) ։ Լուր մեզ Տէր և ողորմեա, ներեա, քաւեա և թող զմեղս մեր։ Արժանաւորեա գոհութեամբ փառաւորել զքեզ ընդ Որդւոյ և ընդ սուրբ Հոգւոյդ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն ։

Digitized by Google

ՔԱՐՈԶ ըստ Մեծացուցին է Կարգալէ:

Եւ եւս խաղաղութեան ըզՏէր աղաչեսցուք:
Տէր ողորմեա:

Վասն սուրբ. տեղւոյս շինութեան և բարեկարգութեան ըզՏէր աղաչեսցուք:

Վասն ժողովրդեանս. որք միտանեն ընդ գրանըս սըրբոյ եկեղեցւոյ ըզՏէր աղաչեսցուք:

Վասն ընդունելոյ. զպաղատանըս սոցա ըստ մեծի ողորմութեան իւրում. ըզՏէր աղաչեսցուք:

Եւ եւս. միաբան վասըն ճըշմարիտ և սուրբ հաւատոյս մերոյ ըզՏէր աղաչեսցուք:

Զանձինըս մեր. և ըզմիմեանըս Տեառն Աստուծոյ ամենակալին յանձն արասցուք:

Ողորմեա մեզ Տէր Աստուած մեր ըստ մեծի ողորմութեան քում ասասցուք ամենեքեան միաբանութեամբ:

Տէր ողորմեա. Տէր ողորմեա. Տէր ողորմեա:

ԱՂՕԹՔ

Դու ես Թագաւոր յաւիտեանս յաւիտենից Քրիստոս Աստուած մեր: Եւ քեզ ընդ Հօր և Հոգւոյդ սրբոյ վայել է փառք իշխանութիւն և պատիւ, այժմ և միշտ և:

Երգ խաղաղերգից առաւօտին:

Եղիցի անուն Տեառն օրհնեալ ի յայսըմհետէ: || մինչեւ ի յաւիտեան:

Օրհնեցէք մանկունք ըզՏէր եւ օրհնեցէք զանուն Տեառն:

Եղիցի անուն Տեառն օրհնեալ յայսըմհետէ մինչեւ ի յաւիտեան:

Digitized by Google

## Դկ. Բկ.

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի. ԻԸ. 1 ։

Վասն յարութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ։

Եւ յերեկոյի շաբաթուն՝ յորում լուսանայր միաշաբաթին, եկն Մարիամ Մագդաղենացի և միւս Մարիամն տեսանել զգերեզմանն ։ Եւ ահա շարժումն մեծ եղև, զի Հրեշտակ Տեառն իջեալ յերկնից՝ մատուցեալ ի բաց թաւալեցոյց զվէմն ի դրաց անտի, և նստէր ի վերայ նորա. և էր տեսիլ նորա իբրև զփայլակն, և հանդերձ նորա սպիտակ իբրև զձիւն ։ Եւ յահէ անտի նորա խռովեցան պահապանքն, և եղեն իբրև զմեռեալս ։ Պատասխանի ետ Հրեշտակն և ասէ ցկանայսն. մի՛ երկնչիք դուք, գիտեմ զի զՅիսուս զխաչեալն խնդրէք. չէ աստ, քանզի յարեաւ՝ որպէս ասացն. եկայք տեսէք զտեղին ուր կայր ։ Եւ վաղվաղակի երթայք ասացէք աշակերտացն նորա թէ յարեաւ. և ահա յառաջանայ քան զձեզ ի Գալիլեա, անդ տեսանիցէք զնա. ահա ասացի ձեզ ։ Եւ ելեալ վաղվաղակի ի գերեզմանէ անտի ահիւ և խնդութեամբ բազմաւ՝ ընթանային պատմել աշակերտացն ։ Եւ ահա պատահեաց նոցա Յիսուս և ասէ. ողջ էք ։ Եւ նոքա մատուցեալ կալան զոտս նորա, և երկիր պագին նմա ։ Յայնժամ ասէ ցնոսա Յիսուս. մի՛ երկնչիք, երթայք ասացէք եղբարցն իմոց՝ զի երթիցեն ի Գալիլեա և անդ տեսցեն զիս ։ Իբրև նոքա գնացին, ահա ոմանք ի զօրականացն եկին ի քաղաքն, և պատմեցին քահանայապետիցն զամենայն որ ինչ եղեն ։ Եւ նոքա ժողովեալ հանդերձ ծերովքն, խորհուրդ առեալ՝ արծաթ յոյժ ետուն զօրականացն և ասեն. ասասջիք՝ եթէ աշակերտքն նորա եկեալ գիշերի գողացան զնա՝ մինչ մեք ի քուն էաք. և եթէ լուր լիցի այդ առ դատաւորն, մեք հաճեցուցուք զնա, և զձեզ անհոգս արասցուք ։ Եւ նոցա առեալ զարծաթն, արարին որպէս ուսանն. և ել համբաւս այս ի Հրէից մինչև ցայսօր ։

Իսկ մետասան աշակերտքն գնացին ի Գալիլեա ի լեառնն՝ ուր ժամադիր եղև նոցա Յիսուս. իբրև տեսին զնա՝ երկիր պագին նմա, և ոմանք յերկուացան ։ Եւ մատուցեալ Յիսուս խօսեցաւ ընդ նոսա և ասէ. տուաւ ինձ ամենայն իշխանութիւն յերկինս և յերկրի. որպէս

Digitized by Google

առաքեաց զիս Հայր, և ես առաքեմ զձեզ։ Գնացէք այսուհետև՝ աշակերտեցէք զամենայն հեթանոսս, մկրտեցէք զնոսա յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյ սրբոյ ։ Ուսուցէք նոցա պահել զամենայն՝ որ ինչ պատուիրեցի ձեզ։ Եւ ահաւասիկ ես ընդ ձեզ եմ զամենայն աւուրս՝ մինչև ի կատարած աշխարհի ։ 20 ։

## ԲՁ· ԴՁ·

### Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մարկոսի . ԺԵ . 42 ։

### Վասն թաղման և յարութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ։

Եւ իբրև երեկոյ եղև, քանզի ուրբաթ էր՝ որ ի շաբաթն մտանէր, եկեալ Յովսէփ որ յԱրիմաթեայն էր, այր պարկեշտ, Նախարար, որ և ինքն իսկ ակն ունէր արքայութեանն Աստուծոյ, համարձակեցաւ եմուտ առ Պիղատոս, և խնդրեաց զմարմինն Յիսուսի ։ Եւ Պիղատոս զարմացաւ, թէ այնչափ վաղ մեռաւ. և կոչեցեալ առ ինքն զհարիւրապետն, եհարց զնա և ասէ, թէ արդարեւ այնչափ վա՞ղ մեռաւ ։ Եւ իբրև ստուգեաց ի հարիւրապետէ անտի, շնորհեաց զմարմինն Յովսեփայ ։ Եւ Յովսէփ գնեաց կտաւ, և իջուցեալ զնա՝ պատեաց կտաւովն, և եդ ի գերեզմանի՝ զոր էր փորեալ ի վիմէ, և թաւալեցոյց վէմ ի դուռն գերեզմանին ։ Իսկ Մարիամ մագդաղենացի և Մարիամ Յակոբայ և Յովսեայ տեսին զտեղին ուր եդաւ ։ Եւ իբրև անց շաբաթն, Մարիամ․ մագդաղենացի և Մարիամ Յակոբայ և Սողոմէ՝ չոգան պատրաստեցին խունկս, զի եկեսցեն օծցեն զնա ։

Եւ ընդ առաւօտս միաշաբաթուն գան ի գերեզմանն ընդ արևագալն, և ասէին ցմիմեանս. ո՞վ թաւալեցուսցէ մեզ զվէմն ի դրաց գերեզմանին ։ Եւ հայեցեալ տեսին՝ զի թաւալեցուցեալ էր զվէմն ի գերեզմանէն. քանզի էր մեծ յոյժ ։ Եւ մտեալ ի ներքս ի գերեզմանն, տեսին երիտասարդ մի՝ զի նստէր ընդ աջմէ կողմանէ՝ զգեցեալ պատմուճան սպիտակ, և զարհուրեցան ։ Եւ նա ասէ ցնոսա . մի՛ երկնչիք . զՅիսուս խնդրէք զնազովրեցի զխաչելեալն, յարեաւ՝ չէ աստ. ահաւադիկ տեղին ուր եդին զնա ։ Այլ երթայք ասացէք ցաշակերտս նորա և ցՊետրոս, եթէ ահա յառաջագոյն երթայ քան զձեզ ի

Գալիլեա, անդ տեսանիցէք զնա՝ որպէս ասացն ձեզ։ Եւ իբրեւ լուան՝ ելին և փախեան ի գերեզմանէն, քանզի զահի հարեալ էին. և ոչ ումեք ինչ ասացին, զի երկնչէին։ ԺԶ. 8։

## ԱԿ. ԳԿ.

### Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու. ԻԳ. 50։

### Վասն Թաղման և յարութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։

Եւ ահա այր մի, անուն Յովսէփ, որ էր Նախարար՝ այր բարեգործ և արդար, սա չէր միաբանեալ ընդ խորհուրդս և ընդ գործս Նոցա, յԱրիմաթեայ քաղաքէ Հրէից, որ և ինքն իսկ ակն ունէր արքայութեան Աստուծոյ. սա մատուցեալ առ Պիղատոս՝ խնդրեաց զմարմինն Յիսուսի. և իջուցեալ զնա պատեաց պատանակալաւ, և եդ ի կռածոյ գերեզմանի, ուր չէր զոք բնաւ եդեալ։ Եւ օրն էր ուրբաթ, և շաբաթ լուսանայր. և երթային զհետ Նորա կանայք՝ որ եկեալ էին ընդ Նմա ի Գալիլեէ, տեսին զգերեզմանն, և որպէս եդաւ մարմին Նորա։ Դարձան, և պատրաստեցին խունկս և իւղս, և ի շաբաթուն հանգարտեցին վասն պատուիրանին։

Բայց ի միաշաբաթուն վաղ քաջ ընդ առաւօտն՝ եկին ի գերեզմանն, բերին զխունկսն զոր պատրաստեցին, և այլ կանայք ընդ Նոսա։ Եւ գտին զվէմն թաւալեցուցեալ ի գերեզմանէ անտի, և մտեալ ի ներքս՝ ոչ գտին զմարմինն Տեառն Յիսուսի։ Եւ եղեւ ընդ հիանալն Նոցա վասն այնորիկ, և ահա արք երկու հասին առ Նոսա ի հանդերձս լուսաւորս։ Եւ իբրեւ զահի հարան՝ և խոնարհեցուցին զերեսս իւրեանց յերկիր, ասեն ցնոսա. զի՞ խնդրէք զկենդանին ընդ մեռեալս, չէ աստ, այլ յարեաւ։ Յիշեցէք որպէս խօսեցաւ ընդ ձեզ մինչ էրն ի Գալիլեա, և ասէր՝ թէ պարտ է որդւոյ մարդոյ մատնել ի ձեռս մարդոց մեղաւորաց, և ի խաչ ելանել, և յերրորդ աւուր յառնել։ Եւ յիշեցին զբանսն Նորա։ Եւ դարձան պատմեցին զայս ամենայն մետասանիցն, և այլոցն ամենեցուն։ Եւ էին Մարիամ Մագդաղենացի և Յովհաննա և Մարիամ Յակոբայ և այլք ընդ Նոսա՝ որ պատմեցին զայս



Digitized by Google

առաքելոցն։ Եւ երևեցան առաջի նոցա շաղփաղփութիւն բանքն նոցա՝ և չհաւատային նոցա։ Բայց Պետրոս յարուցեալ ընթացաւ ի գերեզմանն, և հայեցեալ տեսանէ զկտաւսն լոկ՝ զի կային. և գնաց ընդ միտս զարմացեալ, թէ զինչ եղև։ ԻԴ. 12։

## ԱՁ· ԳՁ·

### Սրբոյ Աւետարանիս որ ըստ Յովհաննու։ ԺԹ. 38։

### Վասն թաղման և յարութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։

Յետ այսորիկ աղաչեաց զՊիղատոս Յովսէփ որ յԱրիմաթեայ էր, աշակերտ Յիսուսի ի ծածուկ վասն ահին Հրէից. զի բարձցէ զմարմինն Յիսուսի. և հրամայեաց Պիղատոս. եկին և բարձին զնա։ Եկն և Նիկոդեմոս՝ որ եկեալն էր առ Յիսուս՝ ի գիշերի զառաջինն, և եբեր զմուռս խառն ընդ հալուէս՝ իբրև լտերս հարիւր։ Առին զմարմինն Յիսուսի, և պատեցին կտաւովք խնկովքն հանդերձ, որպէս օրէն էր Հրէից պատել։ Եւ էր ի տեղւոջն յորում խաչեցաւ՝ պարտէզ, և ի պարտիզի անդ գերեզման նոր, յորում ոչ ոք երբեք էր եդեալ։ Անդ վասն ուրբաթուն Հրէից, զի մօտ էր գերեզմանն, եդին զՅիսուս։

Եւ ի միաշաբաթւոջն Մարիամ մագդաղենացի գայ առաւօտուն ընդ այգալուշն ի գերեզման անդր, և տեսանէ զվէմն բարձեալ ի դրաց գերեզմանին։ Ապա ընթանայ և գայ առ Սիմոն Պետրոս և առ միւս աշակերտն զոր սիրէր Յիսուս, և ասէ ցնոսա. բարձին զՏէր ի գերեզմանէ անտի, և ոչ գիտեմք ուր եդին զնա։ Ել Պետրոս և միւս աշակերտն՝ և գային ի գերեզմանն. ընթանային երկոքին ի միասին։ Եւ միւս աշակերտն յառաջեաց ընթացաւ վաղագոյն քան զՊետրոս՝ և եկն նախ ի գերեզմանն. և խոնարհեալ տեսանէ՝ զի կային անդ կտաւքն, բայց ի ներքս ոչ եմուտ։ Եկն և Սիմոն Պետրոս՝ որ գայր զկնի նորա, և եմուտ ի գերեզմանն. և տեսանէ զկտաւսն զի կային անդ. և վարշամակն որ էր ի գլուխ նորա՝ ոչ ընդ այլ կտաւսն կայր, այլ ուրոյն ծալեալ ի մի կողմն։ Յայնժամ եմուտ և միւս աշա-

կերտն, որ եկեալ էր յառաջագոյն ի գերեզմանն, ետես և հաւատաց. զի չև ևս գիտէին զգիրս՝ թէ պարտ է Նմա ի մեռելոց յառնել ։ Զոգան դարձեալ առ միմեանս աշակերտքն ։ Բայց Մարիամ կայր արտաքոյ գերեզմանին և լայր. և մինչդեռ լայր՝ խոնարհեցաւ ի գերեզմանն, և տեսանէ երկուս հրեշտակս ի սպիտակս, զի նստէին՝ մի ի սնարից և մի յանոտից՝ ուր կայր մարմինն Յիսուսի ։ Եւ նոքա ասեն ցնա. կին դու, զի՞ լաս ։ Ասէ ցնոսա. զի բարձին զՏէրն իմ ի գերեզմանէ աստի՝ և ոչ գիտեմ ուր եդին զնա ։ Զայս իբրև ասաց, դարձաւ ի թիկունս կոյս, և տեսանէ զՅիսուս զի կայր, և ոչ գիտէր թէ Յիսուս իցէ ։ Ասէ ցնա Յիսուս. կին դու, զի՞ լաս, զո՞ խնդրես ։ Նմա այսպէս թուեցաւ՝ թէ պարտիզպանն իցէ. ասէ ցնա. Տէր, եթէ դու բարձեր զնա, ասա ինձ ուր եդիր զնա, զի ես առից զնա ։ Ասէ ցնա Յիսուս. Մարիամ։ Եւ նա դարձաւ և ասէ ցնա եբրայեցերէն. րաբբունի. որ թարգմանի՝ վարդապետ ։ Ասէ ցնա Յիսուս. մի՛ մերձենար յիս, զի չև ևս ելեալ եմ առ Հայր իմ. այլ երթ դու առ եղբարսն իմ, և ասա ցնոսա. ելանեմ ես առ Հայրն իմ և առ Հայր ձեր, և Աստուածն իմ և Աստուած ձեր ։ Գայ Մարիամ մագդաղենացի՝ և պատմէ աշակերտացն եթէ ետես նա զՏէր, և զայս ինչ ասաց ցնա ։ Ի. 18 ։

Երգ չնի խաղաբերից աւետարանին ։

Փառք յարութեան քո Տէր. ոչ դադարեսցայց Քրիստոսի օրհնել ընդ քեզ զամենայն աւուրս կենդանութեան իմոյ ։

Փառք յարութեան քո Տէր. ոչ դադարեսցայց Յիսուսի գովել ընդ քեզ զամենայն աւուրս կենդանութեան իմոյ ։

Ես ոչ դադարեսցայց Փրկիչ փառաւորել ընդ քեզ զամենայն աւուրս կենդանութեան իմոյ ։

Երգ աղաւնոյն նեռակեկեցն. երեկոյ կիւրակէ և շաբաթին քարոզ ասա ։

Զամենայն աւուրս կենաց: յամենից
Եւ յամենայնս ոչ դադարեսցայց:

հանգեալ նոքօք յազգըս մարդկան զանազան լեզուաց բաժանմա : դ ծ : ւ ւ լա : ւ մ ա մ : մ : ա լաղ : ծ մ մը ։

ՎԱՐԴԱՎԱՌԻՆ

Ցընծայ Թաբօր Հերմոնիւ. եւ առաքեալքն ի հայրականն ձայնէն թըմրեալք. եւ կենդանեաց և մեռելոց Տէր ծանուցին ըզքեզ Մովսէս եւ Հեղիա : դ : ւ ւ լա : ւ մ ա մ : մ : ա լաղ : ծ մ ա ։

ԽԱՉԻ

Այսօր եկեալ ամենակալ կամաւ Տէրն ի խաչ. եւ տարածեաց զբազուկս իւր ի նմա : դ ծ : ւ ւ լա : ւ մ ա մ : մ : ա լաղ : ծ մ ։

ԾՆՆԴԵԱՆ

Հովիւք հոգեղէնք ընդ հովուան. քարոզեցին ի յանբանից մըսուր զԲանն բազմեալ: եւ մոգքն աստեղբըն գուշակեալ մատուցին զընծայսըն խորհըրդոյ : դ ծ : ւ ւ լա : ւ մ ա մ : մ : ա ծ մ յ ։

ՏԵԱՌՆԸՆԴԱՌԱՋԻ

Քառասնօրեայ տղայ եւ Տէրն: օրինադիր տընօրինաբար եկն ի տաճարն: եւ Սիմէոն գըգուէր գըրկաքն: և յօրինաց կապից լուծումն հայցէր ի կեանս աւետարանի : դ : ւ ւ լ : ւ մ ա մ : մ : ա լաղ : ծ մ ։

ՔԱՐՈԶ չնչի խաղաքերեց առաւօտանին և երեկոյն ։

Զուարճացեալքս մեծաւ ուրախութեամբ աւետեօք յարութեան Տեառն մերոյ և փրկչին Յիսուսի Քրիստոսի ։ Որ եղև պտուղ և անդրանիկ ամենայն ննջեցելոց ։ Խորտակեաց զդրունս դժոխոց, և ելոյծ զբռնութիւն մահու ։

Digitized by Google

Եւ ետ յոյս հաստատութեան՝ վերստին նորոգման կեն֊դանութեան ամենայն մարդկան ։ Խնդրեսցուք հաւատով ի Փրկչէն մերմէ Յիսուսէ Քրիստոսէ, զի զմեզ արժանի արասցէ յարութեան իւրոյ, կերպարանակից առնել զմարմին խոնարհութեան մերոյ ըստ նմանութեան մարմնոյ փառաց իւրոց ։ Վասն զի զայս խոստացաւ՝ զմեծ և զանճառելի շնորհս պարգևել սիրելեաց իւրոց ճշմարիտն Աստուած ։ Յիսուս Քրիստոս Տէր մեր, կեցո և ողորմեա ։

Կեցո Տէր և ողորմեա ։

ԱՂՕԹՔ

Ամենակեցոյց, ճշմարիտ, սուրբ, մեծի յարութեանն Քրիստոսի Աստուծոյ մերոյ՝ վայելէ փառք իշխանութիւն և պատիւ, այժմ և միշտ։

Ե— [illegible] ։

Ողորմեա ինձ Աստուած ըստ մեծի ողորմութեան քում, ըստ բազում գթութեան քում քաւեա զանօրէնութիւնս իմ։

Առաւել լուա զիս յանօրէնութենէ իմմէ, և ի մեղաց իմոց սուրբ արա զիս ։

Զանօրէնութիւնս իմ ես ինձէն գիտեմ, և մեղք իմ առաջի իմ են յամենայն ժամ։

Քեզ միայն մեղայ Տէր, և չար առաջի քոյ արարի ։

Որպէս արդար եղիցես ի բանս քո, և յաղթեսցես ի դատել քո ։

Անօրէնութեամբ յղացաւ, և ի մեղս ծնաւ զիս մայր իմ։

Դու Տէր զճշմարտութիւն սիրեցեր. զանյայտս և զծած֊կեալս իմաստութեամբ քով յայտնեցեր ինձ ։

Ցօղեա յիս մշտկաւ և սուրբ եղէց, լուա և քան զձիւն սպիտակ եղէց ։

Լսելի արա ինձ զցնծութիւն և զուրախութիւն, և ցնծասցեն ոսկերք իմ տառապեալք ։

Դարձո զերեսս քո ի մեղաց իմոց, և զամենայն անօ֊րէնութիւնս իմ քաւեա յինէն ։

Սիրտ սուրբ հաստատեա յիս Աստուած, և հոգի ու֊ղիղ նորոգեա ի փորի իմում ։

Մի՛ ընկեներ զիս Տէր յերեսաց քոց, և զհոգի քո սուրբ մի՛ հաներ յինէն ։

Digitized by Google

Տուր ինձ ցնծութիւն փրկութեան, և հոգւով պետութեան քո հաստատեա զիս :
Ուսուցից անօրինաց զճանապարհս քո, և ամպարիշտք առ քեզ դարձցին :
Փրկեա զիս յարենէ Աստուած, Աստուած փրկութեան իմոյ. ցնծասցէ լեզու իմ յարդարութեան քում:
Տէր եթէ զշրթունս իմ բանաս, բերան իմ երգեսցէ զօրհնութիւնս քո :
Թէ կամեցեալ էիր՝ պատարագս մատուցանէաք. բայց դու ընդ ողջակէզս իսկ ոչ հաճեցար :
Պատարագ Աստուծոյ՝ հոգի խոնարհ. զսիրտ սուրբ և զհոգի խոնարհ Աստուած ոչ արհամարհէ :
Բարի արա Տէր կամօք քովք Սիոնի, և շինեսցին պարիսպքն Երուսաղեմի :
Յայնժամ հաճեսցիս ընդ պատարագս արդարութեան, ուխտից պատարագս հանցեն ի սեղան քո զուարակս :
Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն : Այժմ և միշտ :

Եւ ասա առ Ողորմեայն ըստ պատշաճի :

ՔԱՐՈԶ ընդ Ողորմեայն :

Երկրպագեմք քեզ Տէր Աստուած մեր անցեալքս ընդ երկարութիւն գիշերիս, և կանխեալքս ի տեղւոջ խոստովանութեան, մատուցանեմք զառաւօտու աղօթս մեր: Զքեզ Տէր օրհնեմք և փառաւորեմք, և զքէն Տէր գոհանամք, որ արժանի արարեր զգիշերս խաղաղութեամբ անցուցանել, և հասանել ի ժամ առաւօտուս : Արժանաւորեա զմեզ Տէր անճառ խոստմանց քոց, զոր խոստացար սիրելեաց քոց՝ ճշմարիտդ Աստուած : Յիսուս Քրիստոս Տէր մեր, կեցո և ողորմեա :
Ողորմեաց մեզ Տէր Աստուած մեր ըստ մեծի ողորմութեան քում. ասասցուք ամենեքեան միաբանութեամբ :

Տէր ողորմեա, Տէր ողորմեա, Տէր ողորմեա :

ՄԱՂԹԱՆՔ ՅԱՐՈՒԹԵԱՆ ԵՒ ՏԷՐՈՒՆԱԿԱՆ

Ողորմած, գթած, ճշմարիտ, սուրբ, մեծի (յարութեանն) Քրիստոսի Աստուծոյ մերոյ վայելէ փառք իշխանութիւն և պատիւ, այժմ և :

### ՄԱՂԹԱՆՔ ՄԱՐՏԻՐՈՍԱՑ

*Բարեխօսութեամբ և աղօթիւք սրբոց (մարտիրոսացն) որոց այսօր է յիշատակ, և ամենայն սրբոց քոց՝ լուր մեզ Տէր և ողորմեա, ներեա, քաւեա և թող զմեղս մեր: Արժանաւորեա գոհութեամբ փառաւորել զՀայր և զՈրդի և զսուրբ Հոգին, այժմ և:*

### ՄԱՂԹԱՆՔ ԳԱՀՈՑ

*Ողորմութեամբ և գթութեամբ քո լուր մեզ Տէր և ողորմեա. ներեա քաւեա և թող զմեղս մեր: Արժանաւորեա գոհութեամբ փառաւորել զՀայր և զՈրդի և զսուրբ Հոգիդ, այժմ և միշտ:*

*Ալէլուիա, ալէլուիա:*

*Օրհնեցէք զՏէր յերկնից, օրհնեցէք զնա ի բարձանց:*

*Օրհնեցէք զնա ամենայն հրեշտակք նորա, օրհնեցէք զնա ամենայն զօրութիւնք նորա:*

*Օրհնեցէք զնա արեգակն և լուսին, օրհնեցէք զնա ամենայն աստեղք և լոյս:*

*Օրհնեցէք զնա երկինք երկնից. ջուրք որ ի վերոյ քան զերկինս՝ օրհնեցէք զանուն Տեառն:*

*Զի նա ասաց՝ և եղեն, հրամայեաց՝ և հաստատեցան:*

*Կացոյց զնոսա յաւիտեանս յաւիտենից, սահման եդ և ոչ անցանեն:*

*Օրհնեցէք զՏէր յերկրէ վիշապք և ամենայն խորք:*

*Հուր և կարկուտ, ձիւն և սառն, հողմ և մրրիկ որք առնէք զբան նորա:*

*Լերինք և ամենայն բարձունք, ծառք պտղաբերք և ամենայն մայրք:*

*Գազանք և ամենայն անասունք, սողունք և ամենայն թռչունք թևաւորք:*

*Թագաւորք երկրի և զօրք իւրեանց, իշխանք և ամենայն դատաւորք երկրի:*

*Երիտասարդք և կուսանք, ծերք և տղայք օրհնեցէք զանուն Տեառն:*

*Բարձրացաւ անուն նորա միայն, խոստովանութիւն նմա յերկինս և յերկրի:*

*Բարձր առնէ Տէր զեղջիւր ժողովրդեան իւրոյ. օրհնութիւն նմա յամենայն սրբոց նորա, յորդւոցն Իսրայէլի, ժողովոյն որ մերձ է առ Տէր:*

Digitized by Google

Օրհնեցէք զՏէր յօրհնութիւն նոր, օրհնութիւն նմա յեկեղեցիս սրբոց:

Ուրախասցի Իսրայէլ յարարիչ իւր. որդիք Սիովնի ցնծասցեն ի թագաւորն իւրեանց:

Օրհնեսցեն զանուն նորա օրհնութեամբ, սաղմոսիւք և օրհնութեամբ սաղմոս ասասցեն նմա:

Հաճի Տէր ընդ ժողովուրդս իւր սուրբ, և բարձր առնէ զհեզս ի փրկութեան:

Պարծեսցին սուրբքն փառօք, և ցնծասցեն ի հան- գիստս իւրեանց, և բարձր արասցեն զԱստուած բերա- նօք իւրեանց:

Սուր երկսայրի եւ ի ձեռս նոցա, առնուլ հատուցումն ի հեթանոսաց, յանդիմանութիւն ամենայն ժողովրդոց:

Կապել զթագաւորս նոցա կապանօք, զզօրաւորս նո- ցա ձեռակապօք երկաթեօք:

Առնել ի նոսա զդատաստանն գրեալ. փառք այս են ամենայն սրբոց նորա:

Օրհնեցէք զԱստուած ի սրբութեան նորա, օրհնեցէք զնա ի հաստատութեան զօրութեան նորա:

Օրհնեցէք զնա ի զօրութեան նորա, օրհնեցէք զնա ի բազում մեծութեան նորա:

Օրհնեցէք զնա ի ձայն օրհնութեան, օրհնեցէք զնա սաղմոսիւք և օրհնութեամբ:

Օրհնեցէք զնա ցնծութեամբ, գովեցէք զնա ուրախու- թեամբ:

Օրհնեցէք զնա ի բանս քաղցր, գովեցէք զնա ի բար- բառ լսելի:

Օրհնեցէք զնա ի ձայն գոհութեան. ամենայն հոգիք օրհնեցէք զՏէր:

Փառք Հօր: Այժմ և միշտ:

Եւ ասա առ Տէր Երկնից բառ պաշտօնի:

Ձէնէ Տէր Երկնիցն առ օրհնութիւն աստուծոյ՝ ասացեալ յանմարմնոց. այլ և ի կատարանդանողաց առաջին ժողովրդին ի հա- րեր և յետոյ հայրապետաց:

Գկ. Փա՛ռք ի բարձունս Աստուծոյ. և յերկիր խա- ղաղութիւն ի մարդիկ հաճութիւն: Եւ օ՛րհնութի՛ւն քե՛զ ի՜ բա՛րձունս. օրհնեալ ես Տէ՜ր Ա՛ստուա՜ծ մեր. օ՛ր-

Digitized by Google

հնեմք զքեզ եւ գովեմք զքեզ։ Խոստովանիմք Տէր զքեզ և երկրպագանեմք քեզ. փառաւորեմք զքեզ. գոհանամք Տէր զքէն վասն մեծի փառաց քոց։ Տէր թագաւոր սուրբդ երկնային. Աստուած եւ Հայր ամենակալ։ Տէր և Որդի Հօր միածին Յիսուս Քրիստոս եւ սուրբ Որդի։ Տէր Աստուած գառն Աստուծոյ և Որդի Հօր որ առեր զմեղս ի կուսէն ողորմեցար. բարձեր զմեղս աշխարհի. և արդ ընկալ զաղաչանս մեր։ Սուրբդ որ նստիս ընդ աջմէ Հօր ողորմեաց մեզ. զի դու միայն սուրբ դու միայն. բարձրեալ ես դու միայն Տէր մեր Յիսուս Քրիստոս։ Տէր և Հոգիդ սուրբ որ ի փառս Աստուած ընդ Հօր. ամէն։

Եւ յամենայն ժամ օրհնեմք զքեզ. Տէր և գովեմք զանուն սուրբ քո յաւիտեան և յաւիտեանս յաւիտենից։ Արժանի արա Տէր ը զօրըս զայս խաղաղութեամբ և առանց մեղաց. պահել զմեզ օրհնեալ ես Տէր Աստուած. հարցըն մերոց գովեալ և փառաւորեալ է անուն սուրբ քո յաւիտեանս ամէն։ Օրհնեալ Տէր, ուսո ինձ զարդարութիւնըս քո։ (Երեքկին) Տէր ապաւէն եղեր մեր ազգէ յազգ։ Ես աղաչեմ Տէր ողորմեա ինձ և բըժըշկեա զանձն իմ ես մեղայ քեզ։ Յոյց մեզ Տէր զողորմութիւնըս քո, և ըզփըրկութիւնըս քո տուր մեզ։ Տէր ողորմութիւն քո յաւիտեան. զգործըս ձեռաց քոց մի անտես առներ։ Տէր իմ զքեզ ապաւէն ինձ արարի. ուսո ինձ առնել ըզկամըս քո զի դու ես Աստուած իմ։ Ի քէն է Տէր աղբիւր կենդանութեան. և լուսով երեսաց քոց տեսանեմք զլոյս։ Ծագեա զողորմութիւնըս քո որք ճանաչեն զքեզ Տէր։

### ՄԱՂԹԱՆՔ

*Փառք պատիւ և երկրպագութիւն ի բարձունս Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ, այժմ և միշտ ։*

Առաւօտու երգն կարգաւ ընդ փառք ի բարձանցն ։

## ԱՌԱՒՕՏՈՒ ԵՐԳ

## ԱՂՈՒՀԱՑԻՑ ԵՒ ԱՅԼՈՑ ԱՒՈՒՐՑ ՊԱՀՈՑ

### ԵՐԿՈՒՇԱԲԱԹԻ

Լոյս տուր Տէր աչաց իմոց : զի մի երբեք ննջեցից ի մահ : ։

Մի ասասցէ թշնամին թէ յաղթեցի նմա : կամ նեղիչք իմ ցնծասցեն թէ ես սասանեցայ : ։

### ԵՐԵՔՇԱԲԱԹԻ

Ի քէն է Տէր աղբիւր կենաց ‖ : և լուսով երեսաց քոց տեսանեմք զլոյս ... յս ։

Մաքրեա զողորմութիւնս քո որք ճանաչեն զքեզ ... զ : զարդարութիւնս քո որք ուղիղ են սրտիւ ... ւք ։

### ՉՈՐԵՔՇԱԲԱԹԻ

Ես ասացի Տէր ողորմեա ի ‖ : բժշկեա զանձն իմ ես մեղայ քեզ ... զ ։

Երանի որ խորհի զաղքատն և զտնանկն : յաւուր չարի փրկէ զնա Տէր ... ր ։

Digitized by Google

## ԱՌԱՒՕՏՈՒ ԽՐԳՔ ԱՒԱԳ ՇԱԲԱԹՈՒՆ

### ԵՐԿՈՒՇԱԲԱԹԻ

Ի սկզբանէ Տէր զերկիր հաստատեցեր || ... եւ գործք ձեռաց քոց երկինք են ... ն: Նոքա կորընչին ... ն: եւ դու կաս և մնաս յաւիտեանս ... ն:

### ԵՐԵՔՇԱԲԱԹԻ

Տարցին թագաւորի կուսանք զհետ նորա || ... Եւ զընկերս նորա տարցին նմա ... : Ածցեն ցընծութեամբ եւ ուրախութեամբ ... մբ: եւ տարցին ի տաճար թագաւորի ... :

### ՉՈՐԵՔՇԱԲԱԹԻ

Խորհեցան եւ խօսեցան զչարութի || ... և զամբարշտութիւն ի բարձունս խորհեցան ... ն: Եդին յերկինս զբերանս իւրեանց ... նց: եւ լեզուս իւրեանց անցին զերկրաւ ... ւ:

### ՀԻՆԳՇԱԲԱԹԻ

Որոգայթս գաղտնեն ամբարշտաց || ... եւ զորս անարժան պատուհասեն անձինք ... ն: Եղեւ Տէր ապաւէն իմ ... մ: Աստուած օգնական յուսոյ իմոյ ... յ:

### ՈՒՐԲԱԹ

Մատնեցայ եւ ոչ ելանէի || ... աչք իմ տկարացան յաղքատութենէ ... :

Digitized by Google

Օրհնեցէք ըզնա ամենայն հրեշտակք նորա ...։
Օրհնեցէք ըզնա ամենայն զօրութիւնք նորա ...։

ԱՌԱՔԵԼՈՑ

Ոչ են բանք եւ ոչ են խօ ... սք։ որոց ոչ լսին ձայնք նոցա ...։

Ընդ ամենայն երկիր ել բարբառ նոցա ...։ մինչեւ ի ծագս աշխարհի են խօսք նոցա ...։

ՄԱՐԳԱՐԷԻՑ

Յեկեղեցիս բարեբանեցէք զԱստուա ... ծ։
Եւ զՏէր յաղբերացն Իսրայէլի ...։

ՀԱՅՐԱՊԵՏԱՑ

Քահանայք քո զգեցցին զարդարութի ... ւն։ եւ սուրբք քո ցնծալով ցնծասցե ... ն։

Յիշեա Տէր ըզԴաւիթ եւ զամենայն հեզութիւն նորա ...։

ՄԱՐՏԻՐՈՍԱՑ

Պարծեսցին սուրբք փառօ ... ք։ եւ ցնծասցեն ի հանգիստ իւրեա ... նց։

Օրհնեցէք ըզՏէր յօրհնութիւն իւ ... ր։ օրհնութիւնք նորա յեկեղեցիս սրբո ... ց։

Ակ. Առաքեա ... ոծ Տէր ըզԱռաջս քո։ եւ զճըշմարտութիւնս քո։ ցոյց մեզ Տէր զողորմութիւն։ եւ քո ծառայիցս լեր օգնական։ բարեխօսութեամբ։ սրբոց մարտիրոսացն։ որոց այսօր է յիշատակ։ ... կ։

Զի սուրբք առաջնորդեալ եկեցուք ի լեառն սուրբ եւ ի յարկս քո ...։ մըտից առաջի սեղանոյ Աստուծոյ առ Աստուած որ ուրախ առնէ զմանկութիւն իմ։ ցոյց մեզ Տէր զողորմ։

## ՔԱՐՈԶ ԿԻՐԱԿԱՄՏԻՑ ԿԻՒՐԱԿԷԻՑ ԵՒ ՑԻՆԱՆՑ

Ասասցուք ամենեքեան միաբանութեամբ Տէր ողորմեա։ Տէր ողորմեա ։

Վասն խաղաղութեան ամենայն աշխարհի և հաստատութեան սրբոյ եկեղեցւոյ զՏէր աղաչեսցուք։

Վասն ամենայն սուրբ և ուղղափառ եպիսկոպոսաց զՏէր աղաչ ։

Վասն սրբազան պապին մերոյ տեառն այս անուն կենաց և փրկութեան հոգւոյ նորին զՏէր աղա ։

Վասն հայրապետին մերոյ տեառն այս անուն կենաց և փրկութեան հոգւոյ նորին զՏէր աղաչեսցուք ։

Վասն վարդապետաց, քահանայից, սարկաւագաց, դպրաց, և ամենայն ուխտի մանկանց եկեղեցւոյ զՏէր աղաչեսցուք ։

Վասն բարեպաշտ թագաւորաց՝ և աստուածասէր իշխանաց՝ զօրավարաց և զօրաց նոցին զՏէր աղա։

Վասն զի Տէրն ամենակալ հնազանդեցուսցէ առաջի նոցա զամենայն պատերազմունս թշնամեաց զՏէր աղաչեսցուք ։

Յաղագս եղբարց և հարց մերոց՝ որք ի գերութեան են և ի չար ծառայութեան, զՏէր աղաչ ։

Յաղագս ճանապարհորդաց և նաւորդաց խաղաղութեամբ հասանել ի նաւահանգիստն բարութեան զՏէր աղաչեսցուք ։

Յաղագս հիւանդաց և ամենայն վշտացելոց փութապէս առողջութեան զՏէր աղաչեսցուք ։

Յաղագս բարեխառնութեան օդոց՝ անձրևաց քաղցրութեան՝ և պտղոց առատութեան զՏէր աղա ։

Յաղագս ուխտաւորաց և պտղաբերից ի սուրբ եկեղեցւի Աստուծոյ զՏէր աղաչեսցուք ։

Եւ յաղագս այնոցիկ՝ որք մատնեալ են ի ձեռս անօրինաց վասն անուանն Քրիստոսի, զՏէր աղա ։

Յաղագս հոգւոցն հանգուցելոց՝ որք ճշմարիտ և ուղիղ հաւատով ի Քրիստոս ննջեցին, զՏէր աղա ։

Յաղագս փրկելոյ զմեզ Տեառն Աստուծոյ յերևելի և յաներևոյթ թշնամւոյն զՏէր աղաչեսցուք ։

Սուրբ զՄարիամ զԱստուածածինն զփառաւորեալ և օրհնեալ միշտ սուրբ կոյսն, սուրբ զՅովհաննէս Մկրտիչն,

Digitized by Google

սուրբ զՍտեփաննոս Նախավկայն, սուրբ զառաքեալսն և զմարգարէսն, արի և յաղթող սուրբ զվկայսն, և զմեծ խոստովանողն Քրիստոսի զհայրապետն մեր զսուրբն Գրիգորիոս լուսաւորիչն Հայաստանեայց աշխարհի :

Յիշեսջիք և զամենայն սուրբս, և նոքօք զՏէր աղաչեսցուք : — Յիշեա Տէր և ողորմեա :

Զառաւօտս լուսոյ և զառաջակայ օրս խաղաղութեամբ անցուցանել հաւատով ի Տեառնէ խնդրեսցուք :

Զհրեշտակ խաղաղութեան պահապան անձանց մերոց ի Տեառնէ խնդրեսցուք :

Զքաւութիւն և զթողութիւն յանցանաց մերոց ի Տեառնէ խնդրեսցուք :

Զսրբոյ խաչին մեծ և կարող զօրութիւն յօգնութիւն անձանց մերոց ի Տեառնէ խնդրեսցուք :

Եւ ևս միաբան : Զանձինս մեր : Ողորմեա մեզ :

ՔԱՐՈԶ. Ի սրբոյն Գրիգորի լուսաւորչին ասացեալ ժամն սրբոց Հռիփսիմեանցն, և ամենայն կուսանաց. այլ և ժամն առաքելոց և մարգարէից :

Գկ. Աստուած մեծ հզօր փառաւորեալ. լուսաւորիչ սրբոց և ի սուրբըս հանգուցեալ. ըզծրգնութիւն սրբոց (առաքելոցըն) բարեխօս ունիմք առ քեզ. աղաչեմք :

Լուր Տէր եւ ողորմեա :

Որ անդադար օրհնաբանիս ի դասուց հոգեղինաց երկնաւոր զօրութեանցն. արժանաւորեա ըզմեզ ուղիղ փառաւորութեամբ ընդ սուրբըս քո. երկրպագել մեծի եւ ահաւոր տէրութեանըդ քում. աղաչեմք :

Օրհնեմք ըզքեզ միաբան սիրով ի յիշատակըս վըկայից քոց. որք հետեւողք եղեն լուսազարդ ճանապարհաց քոց Տէր. որ վասըն մեր յանձն առեր ըզչարչարանս խաչի և մահու. աղաչեմք :

Կատարիչք հաճոյից կամաց աստուածութեանըդ քո. զանձինս իւրեանց պատարագեցին ի վկայութիւն

ճըշմարիտ սիրոյ քո. եւ բուրեցին հոտ անուշից տէրութեանըդ քո. աղաչեմք :

Սըրբեցին զանձինս իւրեանց տաճար անուանըդ քում սրբոյ. մաքրեալք ըզմիտս և զխորհուրդս իւրեանց երկիւղիւըդ քո սրբոյ. եւ դասակից եղեն հո-գեղինաց երկնաւոր զըւարթնոց. աղաչեմք :

Բարեխօսութեամբ սրբուհւոյ Աստուածածնին : 151 :

ՔԱՐՈԶ ՀԱՅՐԱՊԵՏԱՑ ԵՒ ՎԱՐԴԱՊԵՏԱՑ

Առաջնորդք եղեն մեզ ուղիղ գնացիւք ի շաւիղս արքայութեան երկնից. մեծապայծառ ջահիւ հաւա-տով եւ սիրով իւրեանց. ծագեցին ըզլոյս աս-տուածգիտութեան ի սիրտս մեր. աղաչեմք :

Պահպանութեամբ խորհրդոց բանից և գործոց մե-րոց. սրբութեամբ փառաւորել զամենասուրբ զԵրրոր-դութիւնն. ըզՀայր եւ զՈրդի եւ զսուրբ Հոգին յա-ւիտեանս ամէն. աղաչեմք :

Աղաչանաք սրբոց (հայրապետաց) : Տե՟ է Հ՟յր :

ՔԱՐՈԶ ՄԱՐՏԻՐՈՍԱՑ ԵՒ ՃԳՆԱՒՈՐԱՑ

Ըզճըգնութիւն սրբոց (մարտիրոսացըն) բարեխօս ունիմք առ բարերար Որդին Աստուծոյ. զի շնորհեսցես աշխարհի զանշարժ զխաղաղութիւն. եւ պահեսցես հաս-տատուն սուրբ զեկեղեցի. հաստատեալ ի վերայ հիման առաքելոց եւ մարգարէից. աղաչեմք :

Ըզճըգնութիւն սրբոց (մարտիրոսացըն) բարեխօս ունիմք առ բարերար Որդին Աստուծոյ. զի խաղաղա-ցին խռովութիւնք. դադարեսցին յարձակմունք թըշնա-մեաց. տընկեսցի սէր և արդարութիւն ի յերկրի. աղաչեմք :

Աղաչանօք սրբոց (մարտիրոսացըն) Տէր. որք ճը-

Digitized by Google

զնեցան վասն անուանելոց քում սրբոց. նայեա յերկրպագութիւն ժողովելոցս եւ շնորհեա մեզ թողութիւն. եւ հասո՛ւն մասն և բաժին ընդ սուրբս ամենայն. աղաչեմք։

Աղաչանօք սրբոց (մարտիրոսացըն) Տէր. որք զանձինս իւրեանց տանջար մատուցին հօգուոյդ սրբոյ. պարգեւեա երկրի մերում ըզքաղցրախառն օդ և զգուարճալի ըզգըրոյս. առ ի լցուցանել զամենայն հարկաւոր պիտոյից մերոց. աղաչեմք։

Բարեխօսութեամբ սրբուհւոյ Աստուածածնին եւ Յովհաննու կարապետին. սրբոյն Ստեփաննոսի նախավկային. և սրբոց առաքելոց մարգարէից և մարտիրոսաց. եւ սրբոյն Գրիգորի մերոյ լուսաւորչին. բարեխօսութեամբ և աղօթիւք սրբոց սոյն անուն որոց այսօր է յիշատակ եւ ամենայն սրբոց քոց Տէր որք միացան ի սէր աստուածութեան քո. յիշեա եւ զհոգիս ննջեցելոց մերոց և այց արա ի քում գալստեան. աղաչեմք։

Յիշեա Տէր եւ ողորմեա։

Եւ ևս առաւել զյորդորումն սիրոյ. և ըզգործըս բարեաց պարգեւել մեզ խընդրեմք։

Տուր մեզ Տէր Աստուած մեր։

Զանձինս մեր և ըզմիմեանս Տեառն Աստուծոյ ամենակալին յանձն արասցուք։

Քեզ Տեառնդ յանձն եղիցուք։

Ողորմեա մեզ Տէր Աստուած մեր ըստ մեծի ողորմութեան քում. ասասցուք ամենեքեան միաբանութեամբ։

Տէր ողորմեա, Տէր ողորմեա, լուր Տէր եւ ողորմեա։

### ՔԱՐՈԶ ԾՆՆԴԵԱՆՆ ՔՐԻՍՏՈՍԻ ԵՒ ԱՒԵՏԵԱՑ ԵՒ ՓՈԽՄԱՆ ՍՈՒՐԲ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻՆ ԵՒ ՏԵԱՌՆԸՆԴԱՌԱՋԻՆ

Մայր սուրբ ըսքանչելի լուսոյն. որ զԱստուածն ամենայն յաւիտենից յորովայնի քում կրեցեր. և ցնծութեան աշխարհի ծնար ըզԲանն Աստուած. աղաչեմք։

Մայր սուրբ բարեխօսեա։

Աղաչեա վասն մեր զոր ի քէն ըզմարմնացեալն Աստուած. Որ խոնարհեցաւ ի հայրական ծոցոյ՝ էառ մարմին ըստ մարդկային բնութեանս. առնել խաղաղութիւն յերկինս և յերկրի. աղաչեմք։

Աղաչեա։ Ներել մեզ անտես առնել ըզյանցանս մեր. և տալ օգնականութիւն ընդդիմակաց լինել հակառակամարտիցն ի պատերազմի. աղաչեմք։

Աղաչեա։ Զի լռեսցեն պատերազմունք. դադարեսցին յարձակմունք թշնամեաց. տընկեսցի սէր և արդարութիւն ի յերկրի. աղաչեմք։

Աղաչեա։ Անեցուցանել յերկրի մերում ըզքաղցր բըղխումն աղբերաց. զառատ պըտղաբերութիւն բուսոց և տընկոց. առ ի զուարճալի լինել ամենայն հարկաւոր պիտոյից մերոց. աղաչեմք։

Աղաչեա։ Զի միաբանեսցէ զեկեղեցի իւր սուրբ. շինեալ ի վերայ հիման առաքելոց և մարգարէից. պահել անարատ մինչև յօր երևելոյ գալստեան իւրոյ. աղաչեմք։

Աղաչեա վասն մեր Սըրբուհի ըզմիածին քո զՈրդին. և վասն հոգւոցն հանգուցելոց. ընդունել յարքայութիւն երկնից. և տալ մասն և բաժին ընդ սուրբս ամենայն. աղաչեմք։

Ցիշեա Տէր և ողորմեա։

Digitized by Google

Եւ ես առաւել զյորդորումըն սիրոյ և ըզգործըս բարեաց պարգևել մեզ խընդրեմք ։

Տուր մեզ Տէր Աստուած մեր ։

Զանձինըս մեր և ըզմիմեանըս Տեառն Աստուծոյ ամենակալին յանձն արասցուք ։

Քեզ Տեառնդ յանձն եղիցուք ։

Ողորմեա մեզ Տէր Աստուած մեր ըստ մեծի ողորմութեան քում. ասասցուք ամենեքեան միաբանութեամբ ։

Տէր ողորմեա Տէր ողորմեա, մայր սուրբ բարեխօսեա առ Տէր վասըն մեր ։

## ՔԱՐՈԶ ԳԱՀՈՑ

Փառաւորեսցուք զամենակալն Աստուած զՀայր Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի գոհանալով զնմանէ, որ պահեաց զմեզ խաղաղութեամբ ի գիշերիս յայսմիկ, և առաջնորդեաց մեզ ի խաւարէ ի լոյս, ի մահուանէ ի կեանս, յապականութենէ յանապականութիւն, յանգիտութենէ ի գիտութիւն ճշմարտութեան իւրոյ ։ Աղաչեսցուք և խնդրեսցուք ի նմանէ, զի զերկարութիւն տուընջեանս խաղաղութեամբ և ամենայն մտադիւր զուարթութեամբ արասցէ անցուցանել ի մէնջ, և պարըսպեալ պահեսցէ զժողովուրդս իւր աստուածային զօրութեամբն, որ ի վերայ ամենայնի բարերարութեամբն իւրով իշխանութիւն ունի ։ Ամենակալ Տէր Աստուած մեր, կեցո և ողորմեա ։

Զառաւօտս լուսոյ, և զառաջակայ օրս խաղաղութեամբ անցուցանել հաւատով ի Տեառնէ խնդրեսցուք ։

Զհրեշտակ խաղաղ ։ Զքաւութիւն ։ Զսրբոյ խաչին ։
Եւ ես միաբան ։ Զանձինս մեր ։ Ողորմեսց մեզ ։

## ԱՂՕԹՔ

Գոհանամք զքէն Տէր Աստուած մեր, որ երևելի լուսով քո զուարճացուցեր զամենայն արարածս քո. իսկ իմանալի լուսով պատուիրանաց քոց զամենեսեան լուսաւորեցեր զհաւատացեալս ի քեզ ։ Զօրացո և զմեզ Տէր ի պահպանութիւն պատուիրանաց քոց ի տուընջեանս

յայամիկ և յամենայն ժամանակի։ Որպէս զի լուսաւորեալ մտօք միշտ զհաճոյս քո արասցուք. և հանդերձեալ բարեացդ հասցուք ընդ ամենայն սուրբս քո, շնորհօք և մարդասիրութեամբ Տեառն մերոյ և Փրկչի Յիսուսի Քրիստոսի. որում վայելէ փառք, իշխանութիւն և պատիւ, այժմ և միշտ ։

Խաղաղութիւն ամենեցուն ։

Խաղաղութիւն մեր և կեանք որ ի Հօրէ առաքեցար՝ միածին Որդի Աստուծոյ Տէր մեր և Փրկիչ Յիսուս Քրիստոս, տուր մեզ զխաղաղութիւն քո, զոր շնորհեցեր սրբոց քոց առաքելոցն՝ փչմամբ քո ի նոսա զկենդանացուցիչ և զամենազօր Հոգիդ քո սուրբ. որպէս զի և մեք խաղաղացեալք յամենայն աշխարհական սահեցմանց՝ լիցուք տաճար և բնակարան աստուածային շնորհացդ, եւ զոհանալով փառաւորեսցուք զքեզ ընդ Հօր և սուրբ Հոգւոյդ Քրիստոս Աստուած մեր, այժմ և միշտ ։

Եւ ասա սա

Սուրբ Աստուած. սուրբ և հզօր. սուրբ և անմահ ողորմեա մեզ ։ Երեքս կրկնեա և զկնի Թովմայի առաւօտեան ասացեալ։

Փառաւորեալ և օրհնեալ միշտ սուրբ կոյս Աստուածածին Մարիամ մայր Քրիստոսի. մատո զաղաչանըս մեր Որդւոյ քոյ և Աստուծոյ մերոյ ։

ՄԱՂԹԱՆՔ

Փրկեա զմեզ ի փորձութենէ և յամենայն վտանգից մերոց։

ՔԱՐՈԶ

Եւ եւս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք ։

Վասն լսելի լինելոյ Տեառն Աստուծոյ ձայնի աղաչանաց մերոց բարեխօսութեամբ սուրբ Աստուածածնին, և իջանելոյ ի վերայ մեր ողորմութեան և գթութեան Տեառն Աստուծոյ ։ Ամենակալ Տէր Աստուած մեր կեցո և ողորմեա ։

ՔՀ. Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից ։

Խաղաղութիւն ամենեցուն :

Եւ ապա սաղմոս յայնմ յաւուր կիւրակէի յառաւօտընթացս առաւօտունն ։

ԿԹ․ Եղիցի՛ անուն Տեառն օրհնեալ , յայսըմ հետէ մինչեւ յաւիտեան ։

ՍՂ․ Օրհնեցէ՛ք մանկունք զՏէր, և օրհնեցէք զա՛նուն Տեառն ։

Եղիցի՛ անուն Տեառն օրհնեալ, յայսըմ հետէ մինչեւ յաւիտեան ։

Յարեւելի՛ց մինչ ի մուտս արեւու՝ օրհնեալ է ա՛նուն Տեառն ։

Բա՛րձր է ի վերայ ամենայն ազգաց Տէր․ և յերկինս են փա՛ռք նորա ։

Ո՛վ է որպէս Տէր Աստուած մեր ի բարձունս բնակեալ․ և զխոնարհս տեսանէ յերկինս եւ յերկրի ։

Յարուցանէ՛ զաղքատս յերկրէ․ և բարձր առնէ զտառապեալս յա՛ղբեւաց ։

Նստուցանէ՛ զնոսա իշխանս՝ ընդ իշխանս ժողովրդեան իւրոյ ։

Բնակեցուցանէ՛ զամուլն ի տան ուրախամիտ․ Որպէս մայր որդւովք բե՛րկրեալ ։

Յաւուրս կիւրակէից սոյն ընթերցեալ լինի առաւօտուն Ճաշկոթեան, և է յօնս փոխանորդականս սաղմոսք և գիրք և առաւօտունք ըստ ցուցակին ։

ԴԿ․ ԲԿ․

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի․ ԺԵ․ 21 ։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ ելեալ անտի ( Յիսուսի ) գնաց ի կողմանս Տիւրոսի և Սիդոնի ։ Եւ ահա կին մի քանանացի ի սահմանաց անտի նոցա՝ ելեալ, աղաղակէր և ասէր․ ողորմեաց ինձ , Տէր, որդի Դաւթի , դուստր իմ չարաչար այսահարի ։ Եւ նա ոչ ետ նմա պատասխանի ։ Եւ մատուցեալ աշակերտքն նորա՝ աղաչէին զնա և ասէին․ արձակեա զնա՝

զի աղաղակէ զհետ մեր ։ Նա պատասխանի ետ և ասէ. ոչ ուրեք առաքեցայ՝ եթէ ոչ առ ոչխարս կորուսեալս տանն Իսրայելի ։ Եւ նա մատուցեալ երկիր պագանէր Նմա և ասէր. Տէր օգնեա ինձ ։ Պատասխանի ետ Նմա և ասէ. ոչ է բարւոք առնուլ զհաց մանկանց՝ և արկանել շանց ։ Եւ նա ասէ. այո, Տէր, քանզի և շունք կերակրին ի փշրանաց անկելոց ի սեղանոյ տեառն իւրեանց ։ Յայնժամ պատասխանի ետ Նմա Յիսուս և ասէ. ո՜վ կին դու, մեծ են հաւատք քո, եղիցի քեզ որպէս և կամիս ։ Եւ բժշկեցաւ դուստր Նորա ի Նմին ժամու ։ 28 ։

## ԴՁ. ԲՁ.

### Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մարկոսի . Է . 31 ։

### Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի

Եւ ելեալ միւսանգամ ի սահմանացն Տիւրոսի և Սիդովնի, և եկն ի ծովեզրն գալիլեացւոց ի մէջ սահմանացն ի Դեկապոլիս ։ Եւ բերին առաջի Նորա խուլ մի և համր, և աղաչեցին՝ զի ձեռն դիցէ ի վերայ Նորա ։ Եւ առեալ զնա մեկուսի յամբոխէ անտի՝ արկ զմատունս իւր ընդ ականջս Նորա՝ և եթուք անդր. և կալաւ զլեզուէ Նորա, հայեցաւ յերկինս՝ յոգւոց եհան և ասէ. եփփաթա, որ է՝ բացիր ։ Եւ նոյնժամայն բացան լսելիք Նորա, և լուծան կապանք լեզուի Նորա, և խօսէր ուղիղ. և պատուիրեաց Նոցա՝ զի մի՛ ումեք ասիցեն ։ Եւ որչափ Նա պատուիրէր Նոցա , Նոքա ևս առաւել քարոզէին, և ևս քան զևս զարմանային և ասէին. զամենայն ինչ բարւոք գործեաց սա, զի խլից լսել տայ և համերց խօսել ։ 37 ։

## ԱԿ. ԳԿ.

### Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու . Թ . 37 ։

### Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի .

Եւ եղև ի վաղիւն՝ մինչ իջանէին Նոքա ի լեռնէ անտի, ընդ առաջ եղև (Նմա) ժողովուրդ բազում ։ Եւ ահա այր մի ի ժողովրդենէ անտի աղաղակեաց և ասէ. վարդապետ, աղաչեմ զքեզ՝ հայեաց յորդի իմ, զի միամօր է ինձ. և ահա այս հարկանի ի Նմա, և յանկարծ գոչէ, և

Digitized by Google

զարկուցանէ զնա և թաւալեցուցանէ զնա և փրփրեցու-
ցանէ, և հազիւ մեկնի ի նմանէ՝ խորտակեալ զնա. և
աղաչեցի զաշակերտսն քո զի հանցեն զնա, և ոչ կարա-
ցին : Պատասխանի ետ Յիսուս և ասէ. ո՜վ ազգ ան-
հաւատ և թիւր, մինչև յե՞րբ եղէց ընդ ձեզ և անսայցեմ
ձեզ. մատո այսր զորդին քո : Եւ մինչդեռ մատչէր,
զարկոյց զնա դեւն և չարժլեաց : Սաստեաց Յիսուս այ-
սոյն պղծոյ, և բժշկեաց զմանուկն, և ետ զնա ցհայր
իւր : Եւ զարմանային ամենեքեան ի վերայ մեծամե-
ծացն Աստուծոյ : 44 :

## ԱՉ. ԳՉ.

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Յովհաննու. Դ. 46 :

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եկն դարձեալ ի Կանա գալիլեացւոց՝ ուր արար զջուրն
գինի. և անդ էր թագաւորազն մի, որոյ որդի նորա
հիւանդ կայր ի Կափառնաում: Նա իբրև լուաւ, եթէ
Յիսուս եկեալ է ի Հրէաստանէ ի Գալիլեա, եկն առ նա
և աղաչէր զի իջցէ և բժշկեսցէ զորդի նորա. քանզի
մերձ էր ի մեռանել: Ասէ ցնա Յիսուս. եթէ ոչ նշանս
ինչ և արուեստս տեսանէք, ոչ հաւատայք: Ասէ ցնա
թագաւորազնն. Տէր, էջ մինչ չև մեռեալ իցէ մանուկն
իմ: Ասէ ցնա Յիսուս. երթ, որդին քո կենդանի է : Եւ
հաւատաց այրն բանին զոր ասաց նմա Յիսուս, և գնաց :
Եւ մինչդեռ իջանէր, ընդ առաջ եղեն նմա ծառայքն
նորա, աւետիս ետուն և ասեն, թէ մանուկն նորա կեն-
դանի է : Հարցանէր ցնոսա վասն ժամուն՝ յորում ա-
ռաքինեաց. և ասեն ցնա. երէկ յեօթներորդ ժամու ե-
թող զնա ջերմն : Գիտաց հայրն նորա թէ յայնմ ժամու,
յորում ասացն ցնա Յիսուս՝ թէ որդին քո կենդանի է :
Եւ հաւատաց ինքն և ամենայն տուն իւր : Զայս դարձեալ
երկրորդ նշան արար Յիսուս՝ եկեալ ի Հրէաստանէ ի
Գալիլեա : 54 :

Երգ Հօրն տաղնոյ տօնար միաշաբաթին, և է խորհուրդ
երրորդութեան, և յարութեանն Քրիստոսի :

Նորաստեղծեալ բանն յանէից ի սկզբանէ զեր-
կնս երկնից. եւ զերկնային զօրս անմարմնոց խմբ-

նալեացըն զըւարթնոց. եւ ըզգալի տարերս քառեից հակառակաց միաբանից. ‖ որով յաւէտ փառաբանի Երրորդութիւնն անճառելի ։

Երեքսըրբեան մի տէրութիւն միով բնութեամբ Աստուածութիւն. լոյսն որ անեղ արարչական ասաց լինել լոյս եղական. զոր և ծագեաց յօրն առաջին միաշաբաթ կիւրակէին. որով յաւէտ ։

Բարունօրէն բացատրեսցուք զծածկեալ խորհուրդըն ծանիցուք. զի լոյսն անտես իմանալի մաքուր հոգւոց տեսանելի. ի սոյն ծագեաց միաշաբաթ մեզ յարութեան սուրբ ճառագայթ. ‖ եկայք փըրկեալք ընդ զըւարթնոյն տուք օրհնութիւն յարուցելոյն ։

Սէրըդ սիրով խոնարհեցար ի փըրկութիւն մեր մարմնացար. նովին մարմնովըն խաչեցար ի գերեզման մահու եդար. այսօր յարեար աստուածաբար ի հրեշտակաց քարոզեցար. եկայք փըրկեալք ։

Էրեւեցար խընկաբերիցն յողջոյն կենացն ուրախալից. եւ ի լերինըն Գալիլեա առաքելոց մետասանից. արժանացո զմեզ ընդ նոսին զքեզ տեսանել յօրըն վերջին. եկայք փըրկեալք ։

Սիոնի որդիք զարթիք հարսին լուսոյ տուք աւետիք. եթէ փեսայն քո յարուցեալ յաղթեաց մահու իշխանութեամբ. գայ պըսակէ ըզքեզ փառօք եւ ընդ առաջ պըճնեալ զարդուք. երգեա երգ նոր յարուցելոյն նընջեցելոց կենաց պըտղոյն ։

ՔԱՐՈԶ ԿԻՒՐԱԿԷԻՑ ԵՒ ԱՅԼՈՑ ՏԷՐՈՒՆԱԿԱՆ ՏՕՆԻՑ

Խնդրեսցուք հաւատով միաբանութեամբ ի Տեառնէ՝ զի զողորմութեան զշնորհս իւր արասցէ ի վերայ մեր ։ Տէրն ամենակալ կեցուսցէ և ողորմեսցի ։

Կեցո Տէր ։ — Տէր ողորմեա. Տէր ողորմեա.
Տէր ողորմեա ։

Digitized by Google

## ԱՂՕԹՔ

Քում ամենազօր և հրաշալի (յարութեանդ) Քրիստոս Աստուած մեր՝ երկրպագեն զօրք հրեշտակաց. զի դու միայն ունիս զանմահութիւն բնակեալդ ի լոյս անմատոյց։ Եւ մեք հողեղէն արարածքս խոնարհեալ երկիւղիւ երկիր պագանեմք. զսուրբ և զհրաշալի և զյաղթող (զյարութիւնդ) քո օրհնեմք և փառաւորեմք։ Եւ ընդ երկնային զօրսն մատուցանեմք զօրհնութիւն և զփառս ընդ Հօր և ընդ սուրբ Հոգւոյդ, այժմ և միշտ և։

Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս։ Հայր մեր որ։

## ՔԱՐՈԶ ՅՈՐԺԱՄ Ի ԹԱՓՕՐ ԵԼԱՆԵՆ

ՍՐԿ. Եւ ես խաղաղութեան ըզՏէր աղաչեսցուք։

ԴՊ. Տէր ողորմեա։

ՍՐԿ. Վասն ի վերուստ խաղաղութեան և փրկութեան անձանց մերոց. ըզՏէր աղաչեսցուք։

ԴՊ. Տէր ողորմեա։

ՍՐԿ. Ողորմեաց մեզ Տէր Աստուած մեր, ըստ մեծի ողորմութեան քում. ասասցուք ամենեքեան միաբանութեամբ։

ԴՊ. Տէր ողորմեա. Տէր ողորմեա. Տէր ողորմեա։

ՔՀ. Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից։

ԴՊ. Ամէն. ալէլուիա. ալէլուիա ալէլուիա։

ՔՀ. Օրհնեսցի և պահպանեսցի և նախախնամեալ պահեսցի արևելեան կողմն աշխարհիս, և հայրապետութիւն Հայոց, ‖ այս նշանաւ սուրբ խաչիւս և սուրբ աւետարանաւս, և աւուրս շնորհիւ, անուամբ Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ, այժմ և միշտ։

Եւ դպրայգացանեն զերգս յարութեամբս։

Ամէն. ալէլուիա. ալէլուիա ալէլուիա։

Օրհնեսցի և պահպանեսցի և նախախնամեալ պա-

Digitized by Google

հեսցի արեւմըտեան կողմն աշխարհիս, և թագաւորութիւն քրիստոնէից, այս նըշանաւ ։

Եւ շրջելով դառնան ի հարաւ ։

Ամէն. ալէլուիա. ալէլուիա ալէլուիա ։

Օրհնեսցի և պահպանեսցի և նախախնամեալ պահեսցի հարաւային կողմն աշխարհիս, երկիրս անդաստանս և պտղաբերութիւն տարւոյս. այս նըշանաւ ։

Եւ դառնան դէպ ի հիւսիս ։

Ամէն. ալէլուիա. ալէլուիա ալէլուիա ։

Օրհնեսցի և պահպանեսցի և նախախնամեալ պահեսցի հիւսիսային կողմն աշխարհիս, քաղաքս և գիւղս, վանքս, անապատս, և բնակեալ ժողովուրդս ի սմա, այս նըշանաւ ։

Ամէն ։

Եւ դառնան ի բեմն և առեն դարձեալ ։

Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ ։ Այժմ և միշտ ։

Ամէն ։

ՔԱՐՈԶ ԹԱՓՕՐԻ ՍԻ ԽԱՉԻ

Սուրբ խաչիւս աղաչեսցուք զՏէր, զի սովաւ փրկեսցէ զմեզ ի մեղաց և կեցուսցէ շնորհիւ ողորմութեան իւրոյ ։ Ամենակալ Տէր Աստուած մեր, կեցո և ողորմեա ։

ԱՂՕԹՔ

Պահպանեա զմեզ Քրիստոս Աստուած մեր ընդ հովանեաւ սուրբ և պատուական խաչիւդ քով ի խաղաղութեան. փրկեա յերևելի և յաներևոյթ թշնամւոյն ։ Արժանաւորեա գոհութեամբ փառաւորել զքեզ ընդ Հօր և ընդ սրբոյ Հոգւոյդ, այժմ և միշտ և յաւիտեանս ։

Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս ։ Հայր մեր որ ։

Իսկ յայլ աւուրս յետ Սուրբ Աստուածին և քարոզին, ասէ սաղմոս ի Նխա ։

### ՍԱՂՄՈՍ ՃԺԲ

Օրհնեցէք մանկունք զՏէր, և օրհնեցէք զանուն Տեառն։ Եղիցի անուն Տեառն օրհնեալ՝ յայսմ հետէ մինչև յաւիտեան։

Յարևելից մինչ ի մուտս արևու՝ օրհնեալ է անուն Տեառն։

Բարձր է ի վերայ ամենայն ազգաց Տէր, և յերկինս են փառք նորա։

Ո՞վ է որպէս Տէր Աստուած մեր, ի բարձունս բնակեալ, և զխոնարհս տեսանէ յերկինս և յերկրի։

Յարուցանէ զաղքատս յերկրէ, և բարձր առնէ զտառապեալս յաղբևաց։

Նստուցանէ զնոսա իշխանս՝ ընդ իշխանս ժողովրդեան իւրոյ։

Բնակեցուցանէ զամուլն ի տան ուրախամիտ, որպէս մայր որդւովք բերկրեալ։

Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն։ Այժմ և միշտ։

Եւ ասէ շարականն ըստ պատշաճի։

### ՔԱՐՈԶ ԶԿՆԻ ՄԱՆԿԱՆՑՆ

Վասն խաղաղութեան ամենայն աշխարհի, և հաստատութեան սրբոյ եկեղեցւոյ զՏէր աղաչեսցուք։ Ասասցուք ամենեքեան միաբանութեամբ։

Տէր ողորմեա. Տէր ողորմեա. Տէր ողորմեա։

### ԱՂՕԹՔ

Սուրբ ես Տէր Աստուած մեր Հզօր և փառաւորեալ, որ նստիս ի կառս քերովբէականս, և լոյս ծագես յարարածս քո։ Լուսաւորեա զմեզ Տէր ի ժամ առաւօտուս, որպէս զի ընդ ծագել լուսոյ տուընջեանս՝ ծագեսցի առ մեզ գութ մարդասիրութեան քոյ։ Հեռացո ի մէնջ Տէր զխաբէութիւն սատանայի, և զբռնութիւն նորա խորտակեա աղօթիւք և բարեխօսութեամբ ամենայն սրբոց։ Արա և զերկիրս պտղաբեր ի սնունդս ծառայից քոց, յորոց հանապազ փառաւորեալ գովի ամենասուրբ Երրորդութիւնդ, այժմ և միշտ և։

Յաւուրս աղուհացից ասա ասէ Տէր ամենակալ և յետ այնորիկ Բանից իմոց. և յայլ աւուրս պահոց միայն Բանից իմոց։ 165։

Իսկ է փոխս սրբոց այս ։

Սիրեցի զի լուիցէ Տէր զձայն աղօթից իմոց. զի խոնարհեցոյց զունկն իւր առ իս, և ես յաւուրս իմ կարդացի առ Նա ։

Շրջեցան զինև երկունք մահու, և վիշտք դժոխոց գտին զիս ։

Զնեղութիւն և զանձկութիւն գտի, և զանուն Տեառն կարդացի ։

Ո՛ Տէր փրկեա զանձն իմ. ողորմած Աստուած ողորմի և պահէ զտղայս Տէր ։

Ես խոնարհ եղէ և Տէր կեցոյց զիս. դարձ անձն իմ ի հանգիստ քո՝ զի Տէր օգնեաց քեզ ։

Փրկեաց զանձն իմ ի մահուանէ, զաչս իմ յարտասուաց, և զոտս իմ ի գայթակղութենէ. հաճոյ եղէց առաջի Տեառն յերկրին կենդանեաց ։

Հաւատացի զոր և խօսեցայ, և ես խոնարհ եղէ յոյժ ։

Ես ասացի ի զարմանալ իմում՝ թէ ամենայն մարդ սուտ է ։

Զի՞նչ տաց տրիտուր Տեառն ընդ ամենայնի զոր և ետ ինձ ։

Բաժակ փրկութեան ընկալայց, և զանուն Տեառն կարդացից ։

Զաղօթս իմ Տեառն տաց՝ առաջի ամենայն ժողովրդեան Նորա ։

Պատուական է առաջի Տեառն մահ սրբոց իւրոց. ո՜ Տէր ես ծառայ քո եմ, ծառայ և որդի աղախնոյ քոյ ։

Հատեր զկապանս իմ, քեզ մատուցից պատարագս օրհնութեան, և զանուն Տեառն կարդացից ։

Զաղօթս իմ Տեառն տաց առաջի ամենայն ժողովրդեան Նորա, ի գաւիթս տան Տեառն, և ի մէջ քո Երուսաղէմ ։

Օրհնեցէք զՏէր ամենայն ազինք, գովեցէք զնա ամենայն ժողովուրդք ։

Զօրացի ողորմութիւն Նորա ի վերայ մեր, ճշմարտութիւն Տեառն մնացէ յաւիտեան ։

Աստուած յանուան քում կեցո զիս, և ի զօրութեան քում իրաւ արա ինձ ։

Աստուած լուր աղօթից իմոց, ունկն դիր բանից բերանոյ իմոյ ։

Օտարք յարեան ի վերայ իմ, և հզօրք խնդրեցին զանձն իմ, և ոչ համարեցան զքեզ Աստուած առաջի իւրեանց ։

Ահա Աստուած օգնական իմ, և Տէր ընդունելի հոգւոյ իմոյ ։

Ի դարձուցանել զչարն ի թշնամիս իմ, ճշմարտութեամբ քով սատակեա զնոսա ։

Ես կամօք խնդովք պատարագս մատուցից քեզ, և խոստովան եղէց անուան քում Տէր, զի բարի է ։

Յամենայն նեղութենէ իմմէ փրկեցեր զիս, և ի թշնամիս իմ ետես ակն իմ ։

Տուր զօրութիւն ծառայի քոյ, կեցո զորդի աղախնոյ քոյ, և արա առ իս նշան բարութեան ։

Տեսցեն ատելիք իմ և ամաչեսցեն, զի դու Տէր օգնեցեր ինձ և մխիթարեցեր զիս ։

Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն ։ Այժմ և միշտ ։

### Աղօթք Մանասէի Թագաւորին ։

Տէր ամենակալ Աստուած Աբրահամու, Իսահակայ, Յակովբայ և զաւակի նոցա արդարոց. ամենակալ Տէր թող զմեղս իմ ։

Որ արարեր զերկինս և զերկիր և զամենայն զարդ նոցա. ամենակալ ։

Որ կապեցեր զծով բանիւ հրամանաւ քո, փակեցեր զխորս, կնքեցեր ահաւոր և փառաւորեալ անուամբ քով սրբով. ամենակալ ։

Որ ամենայն ինչ սարսէ և դողայ յերեսաց ահի զօրութեան քո. ամենակալ ։

Անբաւ է մեծվայելչութիւն փառաց սրբութեան քո. սաստիկ է բարկութիւն սպառնալեաց քոց ի վերայ մեղաւորաց, անչափ և անքնին են ողորմութիւնք աւետեաց քոց. ամենակալ ։

Դու Տէր բարձրեալ, գթած, երկայնամիտ, բազումողորմ, և զղջանաս ի վերայ չարեաց մարդկան. ամենակալ ։

Դու Աստուած ոչ եդեր ապաշխարութիւն վասն արդարոցն, Աբրահամու, Իսահակայ և Յակովբայ, որք ոչ մեղան քեզ. ամենակալ ։

Այլ եդեր ապաշխարութիւն վասն իմ մեղաւորիս. զի մեղայ աւելի քան զաւազ ծովու և բազմացան անօրէնութիւնք իմ. ամենակալ ։

Չեմ արժանի հայել և տեսանել զբարձրութիւնս երկնից՝ ի բազմութենէ անօրէնութեան իմոյ. ամենակալ։

Կորացեալ եմ ես ի բռնութենէ կապանաց երկաթից, և ոչ գոյ ինձ հանգիստ. ամենակալ։

Բարկացուցի զսրտմտութիւն, և չար առաջի քո արարի, կանգնեցի պատկեր և բազմացուցի զցասումն. ամենակալ։

Եւ արդ Տէր խոնարհեցուցանեմ զծունր սրտի իմոյ, և հայցեմ ի քաղցրութենէ քումմէ. ամենակալ։

Մեղայ Տէր մեղայ, և զանօրէնութիւնս իմ ես ինձէն գիտեմ. ամենակալ։

Աղաչեմ և խնդրեմ ի քէն, թող ինձ Տէր, թող ինձ, և մի կորուսաներ զիս ըստ անօրէնութեան իմոյ. ամե։

Մի յաւիտեան բարկանար ինձ Տէր, և մի՛ յիշեր ըզչարիս իմ, և մի՛ պարտաւորեր զիս ընդ իջեալս ի ներքոյ երկրի չարեաց. ամենակալ։

Զի դու Աստուած՝ Աստուած ապաշխարողաց ես, և յիս ցոյց զբարերարութիւնդ քո՝ զի անարժան եմ. ամե։

Կեցուսցես զիս ըստ բազում ողորմութեան քում, և ես օրհնեցից զքեզ զամենայն աւուրս կենաց իմոց. ամեն։

Զքեզ Տէր օրհնեն ամենայն զուարթունք երկնից, և քո են փառք յաւիտեանս. ամէն։

Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն։ Այժմ և միշտ։

Աղաչեմ և խնդրեմ ի քէն Տէր՝ թող ինձ զմեղս իմ։

Բազումողորմ Տէր, ողորմեա ինձ։

Աստուած, քաւեա զիս զմեղաւորս։

Արարիչ իմ և յոյս Աստուած, գթա յիս ի մեղուցեալ ծառայս, և ողորմեա ինձ բազմամեղիս։

Ամէնօրհնեալ սրբուհի և միշտ կոյս Աստուածածին Մարիամ, բարեխօսեա առ Տէր վասն իմ մեղաւորիս։

Ամենայն սուրբք Աստուծոյ, բարեխօսեցէք առ Հայր յերկինս վասն մեր մեղաւորացս։

Քրիստոս Որդի Աստուծոյ անոխակալ, ընկալ զաղաչանս մեր, զի ի քեզ են ապաւինեալ անձինք մեր։

Յաղթող զօրութեամբ սուրբ և կենդանարար և պատուական խաչիւ քով Տէր պահպանեա զմեզ։

Առաքեա Տէր զհրեշտակ խաղաղութեան քո, որ եկեալ պահեսցէ զմեզ անխռովս ի տուէ և ի գիշերի։

Եւ մարդասիրութեամբ քո յիշեա զմեզ Տէր, յիշեա զմեզ, յորժամ գաս արքայութեամբ քո, և ողորմեա մեզ։

Digitized by Google

## ՔԱՐՈԶ

Եկեալքս ի խոստովանութիւն ապաշխարութեան հաւատովզգոյս միածնի Որդւոյն Աստուծոյ դիցուք ի սիրտս մեր, խնդրելով ի Նմանէ զքաւութիւն և զթողութիւն յանցանաց մերոց։ Վասն զի Նա ինքն է Նախախնամողն Աստուած յաւիտենական, որ եկն կամաւ Հօր ի փրկել զարարածս. և տաաց զինքն լինել քաւիչ մեղաւորաց, յոյս ապաշխարողաց, շնորհելով հանգիստ աշխատելոց, ընդունելով զծանրաբեռնեալքս և զտաժանեալքս մեղօք յապաշխարութիւն քաւութեան։ Արդ եկայք ամենեքեան խոնարհեալ անձամբ, բեկեալ սրտիւք անկցուք և լացցուք առաջի Տեառն արարչին մերոյ, զի անցուսցէ ի մէնջ զցասումն պատուհասի յանցանաց մերոց բարերարութեամբն իւրով։ Ամենակալ Տէր Աստուած մեր, կեցո և ողորմեա։

## ԱՂՕԹՔ

Տէր Աստուած փրկութեան մերոյ՝ որ ողորմած ես և գթած, երկայնամիտ, բազումողորմ, և զղջանաս ի վերայ չարեաց մարդկան՝ որ ոչ կամիս զմահ մեղաւորին, այլ զդառնալ նորա ի չար ճանապարհէն և զկեալն, դու, Տէր, առատ ողորմութեամբ քով մխիթարեա զծառայքս քո. և տուր սոցա տեղի ապաշխարութեան. հաշտեա մարդասիրութեամբ քո, և արա զսոսա անդամս եկեղեցւոյ քում սրբոյ։ Որպէս զի առողջացեալք հոգւով՝ խոստովանութեամբ և ապաշխարութեամբ մտցեն յեկեղեցի քո սուրբ։ Եւ ընդ ժողովրդեան քում քեզ հանցեն զօրհնութիւն և զփառս Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

## ՍԱՂՄՈՍ Ե

Բանից իմոց ունկն դիր Տէր, և ի միտ առ զաղաղակ իմ։
Նայեաց ի ձայն աղօթից իմոց, Թագաւոր իմ և Աստուած իմ,
Ես զքեզ աղաչեմ Տէր, ընդ առաւօտս լուիցես ձայնի իմում. ընդ առաւօտս պատրաստ եղէց յանդիման լինել առ քեզ։

Ոչ թէ դու Աստուած կամիս զանօրէնութիւն, և ոչ բնակեն առ քեզ չարք, և անօրէնք մի՛ բնակեսցեն առաջի աչաց քոց ։

Ատեցեր զայնոսիկ որ գործեն զանօրէնութիւն. կորուսանես զամենեսեան ոյք խօսին սուտ ։

Զայր արիւնահեղ և զնենգաւոր պիղծ առնես դու Տէր, այլ ես ըստ բազում ողորմութեան քում մտից ի տուն քո, երկիր պագից ի տաճար սուրբ քո երկիւղիւ քո ։

Տէր առաջնորդեա ինձ յարդարութեան քում. վասն թշնամեաց իմոց ուղիղ արա առաջի իմ զճանապարհս քո ։

Զի ոչ գոյ ի բերանս նոցա ճշմարտութիւն, և սիրտք նոցա նանրեալք են ։

Որպէս գերեզման բաց է կոկորդ նոցա, և լեզուօք իւրեանց նենգաւորք եղեն ։

Դատեա զնոսա Աստուած, զի անկցին ի խորհրդոց իւրեանց. ըստ բազում ամպարշտութեան նոցա մերժեա զնոսա՝ զի դառնացուցին զքեզ ։

Ուրախ լիցին ամենեքեան՝ ոյք յուսացեալ են ի քեզ, յաւիտեան ցնծասցեն, և բնակեսցես դու ի նոսա ։

Պարծեսցին ի քեզ սիրելիք անուան քո, զի օրհնեսցես դու զարդարն. Տէր, որպէս զինու հաճութեամբ քո պսակեցեր զմեզ ։

Լցաք առաւօտու ողորմութեամբ քով, ցնծացաք և ուրախ եղաք զամենայն աւուրս կենաց մերոց ։

Ուրախ եղաք փոխանակ աւուրցն, յորս խոնարհ արարեր զմեզ. և ամացն՝ յորս տեսաք զչարչարանս ։

Հայեաց Տէր ի ծառայս քո և ի գործս ձեռաց քոց, և առաջնորդեա որդւոց նոցա. եղիցի լոյս Տեառն Աստուծոյ ի վերայ մեր ։

Զգործս ձեռաց մերոց ուղիղ արա ի մեզ Տէր, և զգործս ձեռաց մերոց յաջողեա մեզ ։

Ի խորոց կարդացի առ քեզ Տէր, Տէր լուր ձայնի իմում ։

Եղիցին ականջք քո ի լսել զձայն աղօթից իմոց ։

Թէ զանօրէնութիւնս իմ քննես, Տէր, Տէր, իսկ ո՞ կարէ կալ առաջի քո, զի ի քէն է քաւութիւն ։

Վասն անուան քո համբերի Տէր, համբեր անձն իմ բանի քում, յուսացաւ անձն իմ ի Տէր ։

Ի պահէ առաւօտու մինչև յերեկոյ, ի պահէ առաւօտու յուսացաւ Իսրայէլ ի Տէր ։

Ի Տեառնէ է ողորմութիւն բազում, ի նմանէ է փըր- կութիւն. և նա փրկեաց զիսրայէլ յամենայն նեղութեանց նորա :

Լսելի արա ինձ առաւօտու զողորմութիւնս քո, զի ես ի քեզ Տէր յուսացայ :

Ցոյց ինձ ճանապարհ յոր գնացից, զի առ քեզ Տէր համբարձի զանձն իմ :

Փրկեա զիս ի թշնամեաց իմոց, Տէր, զի զքեզ ա- պաւէն ինձ արարի :

Ուսո ինձ առնել զկամս քո, զի դու ես Աստուած իմ :

Հոգի քո բարի առաջնորդեսցէ ինձ յերկիր ուղիղ :

Վասն անուան քո Տէր կեցուսցես զիս արդարու- թեամբ քով, հանցես ի նեղութենէ զանձն իմ :

Ողորմութեամբ քով սատակեսցես զթշնամիս իմ, և կորուսցես զամենայն նեղիչս անձին իմոյ, զի ես ծառայ քո եմ :

Աստուած յանուան քում կեցո զիս, և ի զօրութեան քում իրաւ արա ինձ :

Աստուած լուր աղօթից իմոց, ունկն դիր բանից բե- րանոյ իմոյ :

Օտարք յարեան ի վերայ իմ, և հզօրք խնդրեցին զանձն իմ, և ոչ համարեցան զքեզ Աստուած առաջի իւրեանց :

Ահա Աստուած օգնական իմ, և Տէր ընդունող հոգւոյ իմոյ :

Ի դարձուցանել զչարն ի թշնամիս իմ, ճշմարտու- թեամբ քով սատակեա զնոսա :

Ես կամօք իմովք պատարագս մատուցից քեզ, և խոս- տովան եղէց անուան քում Տէր, զի բարի է :

Յամենայն նեղութենէ իմմէ փրկեցեր զիս, և ի թըշ- նամիս իմ ետես ակն իմ :

Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն : Այժմ և միշտ :

Երգ Տեառն Ներսեսի վասն երկրորդի աւուր արարչութեանն, և վասն երկնային զօրացն :

Արարչական բանին հրաման ի յերկրորդումն աւուր սկըզբան. ըզջուրսն ի ջուրցըն բաժանեաց հաստատու- թեամբ պարունակեաց. որով զաշխարհս հողեղինաց անջրպետեաց ի հրեղինաց. ընդ նոսին որդիք լու- սոյ տուք օրհնութիւն երրեակ լուսոյն :

# ԱՌԱՒՕՏԵԱՆ

Բազմաչեայ հոյլք քրովբէից երեքսըրբեանըդ սրովբէից. աթոռք անեղ աստուածութեանըն համագոյ Երրորդութեանն. բարեխօս լերուք առ Տէր վասըն մանկանց եկեղեցւոյ. ‖ ընդ նոսին որդիք լուսոյ տուք օրհնութիւն երրեակ լուսոյն:

Գերագոյն իշխանութիւնք և անփոփոխ միշտ տէրութիւնք. անյաղթելի սուրբ զօրութիւնք ի յարարչին փառաւորութիւն. աղաչեցէք զՏէրն ողորմած անտես չառնել զգործըս ձեռացն. ընդ նոսին:

Դասք անմարմնոցըն պետութեանց հրեշտակապետըք բարձրութեանց. հոգիք հրեղէնք և սպասաւորըք հրեշտակաց զինուորութիւնք. մաղթեցէք զՏէրըն տերանց վասըն մարդկան երկրաւորաց. ընդ նոսին:

Երկնաւորաց դասուց վերնոց օրհնաբանից քոց զուարթնոց. քաղցրացին առ քեզ գթած որ վասըն մեր ձայն մաղթանաց. զօրս և տացես մեզ պահապան յայսըմ հետէ մինչ ի վախճան. ընդ նոսին:

Զօրութեանց և տէրութեանց իշխանութեանց և պետութեանց. եւ ամենայն անուանելոց որ ի յերկինս պաղատանօք. ընկալ Քրիստոս ուրախութեամբ զմեզ յօր մահու և յարութեան. ընդ նոսին օրհնել Հոգւով ըզքեզ ընդ Հօր փառաւորել:

Երգ վասն Երրորդի աւուր արարչութեանն, և վասն Երրորդի դարուն, և ի Յովհաննէս Մկրտիչն:

Էական Բանն որ ընդ Հօր արարչակից և համագոր. յերրորդ աւուր զջուրսըն զատոյց զբոյսս և զտունկըս բըղխեցոյց. իսկ ի յերրորդ դարուն դարձեալ զջուրսըն հեղեղ ցամաքեցոյց. զնոյ տապանաւն իւր ապրեցոյց ըզկենդանեաց սեռս աճեցոյց. ‖ տուք օրհնութիւն անճառ լուսոյն Հօր և Որդւոյ և սուրբ Հոգւոյն:

Digitized by Google

Ընդ ծառոց երկրի զգալեաց տընկեաց եւ զտունկս իմանալեաց. զհեղեղ մեղացըն ցամծուցեալ զդաստ անդդորոց բազմացուցեալ. յորոց և մեծն ի ծնունդս կանանց միջնորդ շնորհաց և օրինաց. տուք օրհնութիւն:

Թագաւորին երկնից գլխաւոր արքայութեանն աւետաւոր. խընդրեա դընել ելս ի սրտի առ ի հովտէս տըրտմականէ. յուխտեալ տեղին տէրունական ի խոստացեալն որդւոց մարդկան. տուք օրհնութիւն:

Ժառանգին հօր սպասաւոր և յորդանդէ երկըրպագող. կարապետ և մըկրտիչ այնմ որ մեղաց մերոց քաւիչ. լեր բարեխօս առ նոյն գըթած ջընջել ըզգիր մեր յանցանաց. տուք օրհնութիւն:

Ի հօրէ լոյս ծագեցար մեռեալ բնութեանս կենդանարար. առաքեցեր յառաջընթաց սուրբ զՅովհաննէս քարոզ կենաց. սորին հայցմամբն ամենակալ ըզպաղատանըս մեր ընկալ. տուք օրհնութիւն:

Լուսաւորիչ յերկինս եղիր հողանիւթեայ սուրբ հրեշտակին. արժանացո ըզմեզ նորին նեղ և անձուկ ճանապարհին. զի հետեւող գոլով նորին հօր քո վերին օթեվանին. եւ երգեսցուք ընդ երջանկացն որդւոց լուսոյ քեզ երրորդ փառաց:

Եւ վասն չորրորդի աւուր արարչութեանն, և վասն չորրորդի դարուն, և վասն առաքելոց Աստուածածնին:

Խաւարն անգոյ և սկզբնածին հալածեցաւ յօրն առաջին. լոյսն այն պայծառ յօր չորրորդին. յարեգական նիւթ հաւաքեալ. լուսինն ի տիպ լուսոյ ստեղծեալ և աստեղաց պարք յօրինեալ. որով օրհնի ստեղծողն էից ի բանաւոր պաշտօնէից:

Ծածկեալ խորհուրդըն ծանուցաւ չորրորդ դարուն իսահակաւ. Ի չորրորդ օր դարձեալ հրեշտակն եւ զա-

ւետիսըն կուսական. Թէ լոյսն որ ոչ բովանդակի ի քէն մարմնով պարունակի. || յոր օրհնեցայք ազգ երկրածինք տուք օրհնութիւն պըտղոյ կուսին։

Կուսին նախնոյ մօրն Եւայի յորմէ Ադամըն հին պարտի. բարձան անէծքըն տըրտմական քո սուրբ ծնընդեամբ կոյս Մարիամ. աղաչեա զքո միածինն թողուլ ըզմեղս որդւոց նոցին. յոր օրհնեցայք։

Հարսն ընծայեալ յերկրէ յերկինս յոր համբառնամք առ քեզ զհոգիս. յոր լըսելոյ քո զաւետիս խընդրեա լինել մեզ լըսելիս. զձայն աւետեաց քո միածնին եթէ եկայք օրհնեալք Հօր իմ. յոր օրհնեցայք։

Զայնիւ առ քեզ Տէր պաղատիմք և առաջի քո անկանիմք. աղաչանօք Աստուածածնին շիջո ի մէնջ ըզբոց հնոցին. տուր արտասուօք զմեղըս ջընջել և վերըստին զմեզ նորոգել. յոր օրհնեցայք։

Գեհենավոր ճարտարապետ անցեր ընդ ծով կենցաղս անհետ. վերաբերեա ընդ Պետրոսի զմեզ ի յալեաց մեղաց ծովէս. պաղատանօք գերակուսին անապական քում ծընողին. յոր օրհնեցայք։

Երգ վասն հինգերորդի աւուր արարչութեանն, և վասն հինգերորդի դարուն, և է սուրբ Առաքելոյն Գրիգորոյ։

Ճառագայթեալ Բանն ի Հօրէ յոր հինգերորդըն հրամայէ. բըղխեալ ի ջրոց սեռք կայտառաց և թեւաւորս օդականաց. իսկ ի դարուն հինգ մըկըրտին յամպն եւ ի ծովն Իսրայէլ հին. || տացուք հրաշից ներգործողին պատիւ եւ փառք անեղ Բանին։

Մաքրապէս օրինակի առաքելոցըն Քրիստոսի. որք ի ծովէն տիբերական ի յերկնայինսըն կոչեցան. անցին ընդ ծով աշխարհական և ի Հոգին մըկըրտեցան. տացուք հրաշից։

Յուրախութիւնն անզրաւական ի հարսանիսն անապական. զձեզ առաքեաց Հայրն փառաց հրաւիրատուք տրտմականաց. սուրբ հարսանեացն այն հայցեցէք ընդ ձեզ լինել մեզ պարակից. տացուք հրաշից:

Նորոգողք տիեզերաց ի նախահօրըն յանցանաց. նորափետուր զարդարեցէք զեկեղեցիս հեթանոսաց. պաղատեցէք առ Նոյն զըթած զմեզ նորոգել ի հնոյ մեղաց. տացուք հրաշից:

Շինող էիք զըս համայնից արարածոց ի յանգոյից. նոյն շինեցէք զեկեղեցի վէմդ ի վերայ վիմին բանի. ընդ եղեալ հիմունս ի Նոր Սիոն զմեզ յօդեա շինմամբ ի նոյն. տացուք հրաշից:

Ուրախացարուք գնացիք գետոց քաղաք ի քէն շինեալ Ցիօնիս. յորմէ վըտակք շնորհաց հոսեն զոգիս մարդկան առոգանեն. որքո և մեզ ի Ջրոյն կենաց հայցմամբ հոգւոյն մատըռուակաց. զի բանաւոր երկիրըս քո պըտղաբերի ի փառս քո:

Երգ վասն վեցերորդի ժամուն առաքելութեանն, և վասն վեցերորդի դասուն, և ի խաչելութեանն Քրիստոսի:

Զհանդուրժեալ բնութեամբ բարուոյն ունել միայն զանձառ բարին. այլ ստեղծեալ զմարդ յիւր պատկերին ի վեցերորդն աւուրին. եւ ի յերրորդ ժամ զկողածինն ի յօգնութիւն եւ հողածնին. զորս ի դրախտին եդ վայելել բայց ի պտղոյն մահու արգել:

Պապանձեալ առ դատողին յետ յանցանացն Ադամըն հին. զկինըն պատճառ եղեալ խաբմանն և կինըն զօձըն դաւաճան. որով երկիրս այս անիծաւ փուշ եւ տատասկ ի սմա բուսաւ. վըճիռ մահու մարդոյն տըւաւ դառնալ ի հող ուստի ստեղծաւ:

Ջնջել փութայր Հայրըն փառաց ըզգիր պարտեաց մեր յանցանաց. որով զգեցաւ Որդին գըթած ի վեց դարուն զմարմին մեղաց. Հօր հաճութեամբ ի մահ խաչին եկըն կամաւ ի յուրբաթին. գառըն զենաւ ի հին զատկին փոխան գառանցն օրինակին։

Ռահիւ լուսոյ պատուիրանին արդարութեան ճանապարհին. բարձրանալով քո ի խաչին բարձրացուցեր զմեզ ի յերկինս. քո անպատում խոնարհութեամբդ և կամաւոր խաչելութեամբն. ‖ Հաշտեաց ընդ մեզ Տէր գըթութեամբ և թող ըզմեղս ողորմութեամբ։

Սոսկալիդ սերովբէից և ահաւորըդ քերովբէից. խոնարհեցար ի չարչարանս չարչարելի բնութեամբ մարդկան. ի խաչին զմեղըս սպաներ և զդատակնիք մահու լուծեր. Հաշտեաց։

Վեհագոյն բնութեանց էից և արարիչըդ բոլորից. յորժամ ծագես զխաչիդ նշան ի գալըստեան քո միւսանգամ. զերկըրպագուս այժմ հաւատով լուսաւորեա նորին լուսով. զի համաձայն խաչանզգեցիցն ըզքեզ օրհնեմք յաւիտենից։

Երգ վասն եօթներորդի աւուր արարչութեանն, և վասն եօթներորդի դարուն, և է խորհուրդ հանգստեանն.

Տէրն յետ ստեղծմանն արարածոց հանգեաւ յեօթն օրն ի գործոց. այն որ հանգիստ աշխատելոց և կամքըն գործ է եղելոց. ուստի և մեզ յոյս հաստատուն ետ հանգըստեամբըն շաբաթուն. թէ աստ գործել զգործ Աստուծոյ անդ է հանգչել ընդ Աստուծոյ։

Բարունաբար վարդապետիմք յօրինակէ Տեառըն խրատիմք. որ ի յերկրորդ արարչութեանն յետ կատարման տնօրէնութեանն. յեօթներորդ որ հանգըս-

տեան իջեալ մարմնով ի գերեզման. զկապեալ հոգիսըն վերածեաց զանանց հանգիստըն պատրաստեաց:

Ցօղդ որ ի քոյդ կողէ ցօղեալ բըժըշկեսցէ ըզհանգուցեալսն. իջցէ ի հող մահու նոցին և բուսուսցէ յօրըն վերջին. կենդանարար ձայնիւըդ քո կոչեա զնոսա ի կեանըս քո. և դասեցո ընդ արդարոցն երգել քեզ փառս ընդ զըւարթնոցն:

Խիւծեալ զբնութիւնս կենաց ունող դարձոյց յանցանքն ի մահու հող. իսկ անմահիդ մեռելութիւն շնորհեաց դարձեալ զանմահութիւն. զորս ես ընդ քեզ թաղեալ մահուամբ աւազանին մըկըրտութեամբ. յարո ընդ քեզ քոյին փառօք արեգական նըման լուսով:

Փայլեն արդարքն յարքայութեանն և ճըգնաւորքն ի հանգըստեանն. մարտիրոսքըն պըսակին և կուսանաց լապտերք վառին. դասեցո Տէր ընդ նոսին որ զքեզ Աստուած խոստովանին. արդարութեամբ մի դատեսցին այլ գըթութեամբ քո քաւեսցին:

Քո անպատում խոնարհութեամբդ որ թաղեցար մեռելութեամբ. և յարուցեր յորդւոց մարդկան որք հաւատով ի քեզ անկան. յարո և զմեզ արդարութեամբ և զննջեցեալսն ողորմութեամբ. զի կենդանեացըս բերանով տացին քեզ փառս ընդ Հօր Հոգւով:

ՄԱՂԹԱՆՔ Ի ՏՕՆԻ ԱՄԵՆԱՅՆ ՍՐԲՈՑ

Քրիստոս Աստուած մեր, վասն խաչի քո պատուականի զխաղաղութիւն քո տուր մեզ Տէր:

Վասն սրբուհւոյ Աստուածածնին և Յովհաննու կարապետին և սրբոյն Ստեփանոսի նախավկային զխաղաղութիւն քո տուր մեզ Տէր:

Վասն սրբոց քոց առաքելոց, մարգարէից, վարդապետաց, մարտիրոսաց, հայրապետաց, ճգնաւորաց, կուսանաց, միանձանց և երկնային զօրացն զխաղաղութիւն քո տուր մեզ Տէր:

Digitized by Google

Վասն սրբոյն Գրիգորի մերոյ լուսաւորչին, բարեխօսութեամբ և աղօթիւք սրբոցն այս աւուրն, որոց այսօր է յիշատակ, զխաղաղութիւն և զմեծ զողորմութիւն քո պարգևեա մեզ մարդասէր Տէր։

### ՔԱՐՈԶ ԱՌԱՔԵԼՈՑ ԵՒ ԱՄԵՆԱՅՆ ՍՐԲՈՑ

Սուրբ ճգնաւորաքն աղաչեսցուք զՏէր, որք զչարսն պարտեցին, նեղութեանցն համբերեցին, լուսեղէն և երկնային անթառամ պսակացն արժանի եղեն։ Աղօթիւք նոցա և բարեխօսութեամբ մեզ ողորմեսցի։ Ամենակալ Տէր Աստուած մեր, կեցո և ողորմեա։

### ԱՂՕԹՔ Ի ՏՕՆԻ ԱՌԱՔԵԼՈՑ ԵՒ ՄԱՐԳԱՐԷԻՑ ԵՒ ՀԱՅՐԱՊԵՏԱՑ ԵՒ ՎԱՐԴԱՊԵՏԱՑ

Որ ընտրեցեր և ընկալար զերանելի զվկայսն քո այս աւուրն Քրիստոս Աստուած մեր, և հաղորդս արարեր զնոսա կամաւոր չարչարանաց քոց, արդ բարեխօս առ քեզ ունիմք որք աստ և ընդ ամենայն տիեզերս սուրբք իցեն. որպէս զի աղօթիւք նոցա և բարեխօսութեամբ խաղաղացուսցես զկենցաղավարութիւնս մեր, փրկելով զմեզ յերևելի և յաներևոյթ թշնամւոյն։ Շնորհեա մեզ Տէր ըստ օրինակի նոցա կեալ, և զվախճանն մեր կնքեա ուղղափառ խոստովանութեամբ ի յոյս կենացն յաւիտենից։ Զի և մեք արժանի եղիցուք մտանել յերկնային խորանան լուսոյ, և ժառանգել զպատրաստեալն ի սկզբանէ աշխարհի սրբոց քոց զարքայութիւնդ։ Եւ ընդ նոսին գոհանալով փառաւորեսցուք զքեզ ընդ Հօր և ընդ սրբոյ Հոգւոյդ, այժմ։

### ԱՂՕԹՔ ՄԱՐՏԻՐՈՍԱՑ, ՃԳՆԱՒՈՐԱՑ ԵՒ ԿՈՒՍԱՆԱՑ

Պսակիչ սրբոց Քրիստոս, որ պսակես զսուրբս քո, և տանես զկամս երկիւղածաց քոց, և նայիս սիրով և քաղցրութեամբ յարարածս քո, լուր մեզ յերկնից ի սրբութենէ քումմէ բարեխօսութեամբ սուրբ Աստուածածնին և աղաչանօք ամենայն սրբոց քոց և որոց այսօր է յիշատակ։ Լուր մեզ Տէր և ողորմեա, ներեա, քաւեա և թող զմեղս մեր։ Արժանաւորեա գոհութեամբ փառաւորել զքեզ ընդ Հօր և ընդ սուրբ Հոգւոյդ, այժմ։

Digitized by Google

Ի Սովորական հանգստեան աւուրս ։

Յիշեա Տէր զպաշտօնեայս քո, զծնողսն մեր, զվարդապետս, զեղբարս, զընկերս, զկերակրիչս, զուխտաւորս, զճանապարհորդս, զհանգուցիչս, զվաստակաւորս, զխոստովանողս, զապաշխարողս, զգերիս, զհիւանդս, զննջեցեալս, զիշխանս, զչարարարս, զբարերարս, զթշնամիս, զատելիս, և որք պատուիրեցին մեզ հաւատով ։

Յիշեա Տէր և ողորմեա ։

Բարերար և բազումողորմ Աստուած քո անմոռաց գիտութեամբդ և անբաւ մարդասիրութեամբդ՝ յիշեա զամենայն հաւատացեալս ի քեզ, և ողորմեա ամենեցուն. օգնեա և փրկեա յիւրաքանչիւր վտանգից և ի փորձութեանց ։ Արժանաւորեա գոհութեամբ փառաւորել զՀայր և զՈրդի և զսուրբ Հոգի, այժմ և միշտ և ։

ՄԱՂԹԱՆՔ ԳԱՀՈՑ ՅԵՏ ԱՐԱՐՉԱԿԱՆԻՆ

Խաչ քո եղիցի մեզ ապաւէն, Տէր Յիսուս. յորժամ երկիւ փառօք Հօր ընդ ամպս լուսաւորս, յայնժամ մեք մի ամաչեսցուք յուսացեալքս ի քեզ, այլ զօրութեամբ քով մեծաւ բերկրեսցուք ընդ աջմէ քումմէ, որպէս որդիս լուսոյ և որդիս տուընջեան ։

ՔԱՐՈԶ

Աղաչեսցուք զամենակալն Աստուած, զի պահպանեսցէ զժողովուրդս իւր ընդ հովանեաւ սուրբ և պատուական խաչիւն իւրով ի խաղաղութեան ։ Ամենակալ Տէր Աստուած մեր, կեցո և ողորմեա ։

ԱՂՕԹՔ ԳԱՀՈՑ

Օգնեա մեզ Տէր, օգնեա մեզ Աստուած փրկիչ մեր վասն մեծի փառաց անուան քո. Տէր փրկեա զմեզ, և քաւեա զմեղս մեր վասն անուան քո սրբոյ ։ Պարսպեալ պահեա զառ ի քեզ զապաւինեալ և զյուսացեալ ժողովուրդս քո, ընդ հովանեաւ սուրբ և պատուական խաչիւդ քով ի խաղաղութեան ։ Փրկեա յերևելի և յանեւ-րևոյթ թշնամւոյն ։ Արժանաւորեա գոհութեամբ փառաւորել զքեզ ընդ Հօր և ընդ սրբոյ Հոգւոյդ, այժմ և միշտ և ։

Յիշեա Տէր զպաշտօնեայս ։ Բարերար և բազումողորմ ։

Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս ։ Հայր մեր որ ։

Digitized by Google

# ԿԱՐԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ

# ՀԱՍԱՐԱԿԱՑ ԱՂՕԹԻՑ

## ԱՐԵՒԱԳԱԼԻ ԺԱՄՈՒՆ

### ՈՐ ԿԱՏԱՐԻ Ի ԴԷՄՍ ՀՈԳՒՈՅՆ ԱՍՏՈՒԾՈՅ

### ԱՅԼ ԵՒ Ի ԴԷՄՍ ՅԱՐՈՒԹԵԱՆՆ ՔՐԻՍՏՈՍԻ ԵՒ ԵՐԵՒՄԱՆ ԱՇԱԿԵՐՏԱՑՆ



Եղիցի անուն Տեառն օրհնեալ յաւիտեան, զի յառաջ քան զարեւ է անուն նորա։

Ի նա օրհնեսցին ամենայն ազգք երկրի, եւ ամենայն ազինք երանեսցեն նմա։

Օրհնեալ Տէր Աստուած Իսրայէլի՝ որ առնէ սքանչելիս միայն. եւ օրհնեալ է անուն սուրբ փառաց նորա յաւիտեան. լցցի փառօք նորա ամենայն երկիր. եղիցի, եղիցի.

Փառք Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն։ Այժմ եւ միշտ։

Եւ եւս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք ընկալ։

Օրհնութիւն եւ փառք Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն։

ԵՐԳ ԱՐԵՒԱԳԱԼԻՆ

Դկ. Յարուցելոց մինչ ի մուտս. ի հիւսիսոյ եւ ի հարաւոյ. ամենայն ազգ եւ ազինք. յօրհնութիւն նոր օրհնեցէք զարարիչն արարածոց որ. ծագեաց ընդլոյս արեգականն այսօր յաշխարհս։

Եկեղեցիք արդարոց. փառաբանիչք ամենասուրբ Երրորդութեանն. յառաւօտուս լուսոյ. զառաւօտ խաղաղութեան Քրիստոս զովեցէք ընդ Հօր եւ Հոգւոյն որ. ծագեաց ընդլոյս գիտութեան իւրոյ ի մեզ։

ՅՈՐԴՈՐԱԿ

Յարուցելոց յարեւմուտս մանկունք Սիոնի. օրհնեցէք միշտ անդադար զծագողն լուսոյ։

Եկեղեցիք արդարոց եւ փառաբանիչք. բարեբանեցէք որ ետ զիմաստս լուսոյ։

Digitized by Google

## ՔԱՐՈԶ

Ցարեւելից մինչեւ ի մուտս արեւու ընդ ամենայն տեղիս քրիստոնէութեան, ուր և կարդան զանուն Տեառն սրբութեամբ, Տէր աղօթիւք Նոցա և բարեխօսութեամբ մեզ ողորմեսցի ։ Ուխտիւք զԱստուած աղաչեսցուք, զի նա փրկեսցէ զմեզ ի մեղաց և ի ցանկութենէ աշխարհի. ընկալցի զուխտս և զխնդրուածս սրտից մերոց, և արժանի արասցէ զմեզ հաւատոց և պատուիրանաց իւրոց ընդ ամենայն սուրբս իւր ։ Ամենակալ Տէր Աստուած մեր, կեցո և ողորմեա ։

Զառաւօտս լուսոյ, և զառաջակայ օրս խաղաղութեամբ անցուցանել հաւատով ի Տեառնէ խնդրեսցուք ։

Զհրեշտակ խաղաղ ։ Զքաւութիւն ։ Զսրբոյ խաչին ։
Եւ ևս միաբան ։ Զանձինս մեր ։ Ողորմեաց մեզ ։

## ԱՂՕԹՔ

Ցարեւելից մինչեւ ի մուտս արեւու օրհնեալ ես Տէր, վասն զի Թագաւոր քաղցր ես, և անուն քո ահեղ ընդ ամենայն տիեզերս ։ Քաղցրասցին սաղմոսերգութիւնք մեր առաջի քո. եւցեն իրաւունք յարդարութենէ քումմէ ի տկարութիւնս մեր, և փառաւորեսցի ամենասուրբ անուն քո ։ Եւ մեք արժանի եղիցուք կալ ի պատուիրանի քում, և քեզ երգել զօրհնութիւն և զփառս Հօր և Որդւոյ և Հոգւոյդ սրբոյ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն ։

### Խաղաղութիւն ամենեցուն ։

Աստուած մշտնջենաւոր, Աստուած յաւիտենական, որ ի սորին աշխարհս լոյս ծագեցար, և լուսաւորեցեր զմեզ ի խաւարային մեղաց մերոց, որ վասն մեր ի չափաւորութիւն եկիր անչափդ Աստուած, և հեղեալ ծաւալեցեր զշնորհս Հոգւոյդ սրբոյ յարարածս քո, այժմ և յաւիտեանս ժամանակաց բարեբանեալ ես, ամենամեծդ Աստուած, ընդ Հօր և ամենասուրբ Հոգւոյդ, այժմ և միշտ ։

## ՍԱՂՄՈՍ ՂԹ

Աղաղակեցէք առ Տէր ամենայն երկիր, ծառայեցէք Տեառն ուրախութեամբ ։

Մտէք առաջի Նորա ցնծութեամբ, ծանիրուք զի Նա է Տէր Աստուած մեր ։



Digitized by Google

Նա արար զմեզ և ոչ մեք էաք, մեք ժողովուրդք և խաշն արօտի Նորա։
Մտէք ընդ դրունս Նորա խոստովանութեամբ, և օրհնութեամբ ի յարկս Նորա։
Խոստովան եղերուք Տեառն, և օրհնեցէք զանուն Նորա։
Քաղցր է Տէր, յաւիտեան է ողորմութիւն Նորա, ազգէ մինչև յազգ է ճշմարտութիւն Նորա։
Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն։ Այժմ և միշտ։

ԵՐԳ

Դկ. Ճըգնաւորք Առաքելոյ. և ժառանգորդք երկնից արքայութեանն. որք փոխանակեալք զանցաւորս առէք զանանցն բարութիւնսն. բարեխօսեցէք առ Տէր վասն մանկանց եկեղեցւոյ։
Նահատակք պանծալիք. և սիրեցեալք ի յերկնաւոր Հօրէն. որք մըկըրտեցայք ընդ Քրիստոսի արեամբ ձերով ի մահ խաչին. բարեխօսեա։
Մարտիրոսք ցանկալիք. և օթևանք Հոգւոյն ճշմարտութեանն. որք յաղթեցէք հոգւով կարեաց և ցանկութեան. բարեխօսեցէք։
Գովելիք աշխարհի. և բաղձալիք վերնոցն պետութեանց. որք երանութեան մասին հասէք քան զամենայն որդիս մարդկան. բարեխօսեա։
Կամաւոր պատարագք. մանկունք տիօք և կատարեալք իմաստութեամբ. որք փոխանակ կաթին արբէք զգինին զմայլեցուցիչ. բարեխօսեա։

ՑՈՐԴՈՐԱԿ

Ճըգնաւորք ճըշմարիտք վըկայք Քրիստոսի. բարեխօսեցէք առ Տէր վասն անձանց մերոց։
Նահատակք կենդանիք սիրողք Քրիստոսի. որք չարչարեցայք մարմնով վասն անուանն Տեառն։
Մարտիրոսք ցանկալիք մարդկան ըղձալիք. հայցեցէք ի սուրբ Հոգւոյն տալ մեզ ըզբարիս։

Digitized by Google

Գովելիք վերնոց դասուց. պարծանք աշխարհի.
խնդրեցէք զխաղաղութիւն տան եկեղեցւոյ:
Կամաւոր սուրբ պատարագք հասակաւ մանկունք.
հայցեցէք լինել եւ մեզ ձեզ պըսակակից:

ՄԱՂԹԱՆՔ

Աղաչեմք ողորմեա, Տէր բարերար աղաչեմք ողորմեա, վասն աղօթից սրբոց ճգնաւորացն աղաչեմք ողորմեա մեզ:

ՔԱՐՈԶ

Սուրբ ճգնաւորացն աղաչեսցուք զՏէր, որք զչարսն պարտեցին, նեղութեանցն համբերեցին, լուսեղէն և երկնային անթառամ պսակացն արժանի եղեն, աղօթիւք նոցա և բարեխօսութեամբ մեզ ողորմեսցի: Ամենակալ Տէր Աստուած մեր, կեցո և ողորմեա:

ԱՂՕԹՔ

Սուրբ ես Տէր, և ի սուրբս հանգուցեալ. և մեք սուրբ վկայիւքս աղաչեմք զքեզ, բարեխօսութեամբ սուրբ Աստուածածնին՝ և աղաչանօք ամենայն սրբոց քոց մի մերժեր զմեզ յողորմութենէ քումմէ, այլ կեցո զմեզ աղօթիւք սոցին. զի դու ես բազումողորմ Աստուած. և քեզ վայելէ փառք իշխանութիւն և պատիւ, այժմ և միշտ:
Յիշեա Տէր զպաշտօնեայս քո, զծնողսն մեր: 175:
Բարերար և բազումողորմ Աստուած, քո անմոռաց:

ՍԱՂՄՈՍ ԿԲ

Աստուած Աստուած իմ, ես առ քեզ առաւօտ առնեմ. ծարաւեցաւ առ քեզ հոգի իմ, քանիպատիկ ևս և մարմին իմ:
Որպէս երկիր անապատ և անջուր, ուր ոչ գոյ ի նմա ճանապարհ:
Այսպէս ի սուրբս երևեցայց քեզ, տեսանել ինձ ըզզօրութիւն քո և զփառս քո:
Վասն զի լաւ է ինձ ողորմութիւն քո քան զկեանս իմ, և շրթունք իմ գովեսցեն զքեզ:
Այսպէս օրհնեցից զքեզ ի կեանս իմ, և յանուն քո համբարձից զձեռս իմ:

Digitized by Google

Որպէս ի ճարպոյ պարարտութենէ լցցի անձն իմ, շրթամբք ցնծութեան օրհնեսցէ զքեզ բերան իմ։

Զի թէ յիշէի զքեզ յանկողնի իմում, ընդ առաւօտս կանխեալ խօսէի ընդ քեզ ։

Զի եղեր իմ օգնական. ի հովանի թեւոց քոց ցնծացայց ։

Եկն զկնի քո անձն իմ, և զիս ընկալաւ աջ քո. իսկ նոքա ի նանիր խնդրեցին զանձն իմ։

Մտցեն ի ներքոյ անդնդոց երկրի. մատնեսցին ի ձեռս սրոյ, և բաժինք աղուեսուց եղիցին ։

Թագաւոր յուսացաւ ի Տէր, գովեսցին ամենեքեան, որ երդնուն նովաւ, խցցին բերանք այնոցիկ՝ որ խօսին զանիրաւութիւն ։

Լուր Աստուած աղօթից իմոց յաղաչել ինձ առ քեզ. յերկիւղէ թշնամւոյն փրկեա զանձն իմ.

Ծածկեսցես զիս ի ժողովոց չարաց, ի բազմութենէ ոյք գործեն զանօրէնութիւն ։

Ոյք սրեցին որպէս սուսեր զլեզուս իւրեանց, լարեցին զաղեղունս իւրեանց յիրս դառնութեան ։

Զգել ի գաղտնիս այնոցիկ ոյք ուղիղ են սրտիւք. յանկարծակի ձգեսցեն ի նոսա և մի՛ երկիցեն ։

Ոյք զօրացուցին յանձինս իւրեանց զբանս չարութեան, խորհեցան թաքուցանել ինձ որոգայթ, և ասացին՝ ոչ տեսանէ զայս Տէր ։

Քննեցին զանօրէնութիւն, պարտասեցան ի քննել զքննութիւն ։

Մատիցէ այր ի խորութիւն սրտի իւրոյ, և բարձր եղիցի Աստուած ։

Նետք տղայոց եղեն վէրք նոցա, տկարացան ի նոսա լեզուք իւրեանց. և խռովեցան ամենեքեան ոյք հայէին ընդ նոսա ։

Երկեաւ ամենայն մարդ և պատմեցին զգործս Աստուծոյ, և զարարածս նորա ի միտ առին ։

Ուրախ եղիցի արդար ի Տէր, և յուսասցի ի նա. նովաւ գովեսցին ամենեքեան ոյք ուղիղ են սրտիւք ։

Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն ։ Այժմ և միշտ ։

Ծ Ր Գ

Լոյս արարիչ լուսոյ առաջին լոյս. բնակեալդ ի լոյս յանմատոյց. Հայր երկնաւոր ի դասուց լուսե-

զինացն օրհնեալ. || Ի ծագել լուսոյ. առաւօտուս ծագեա ի հոգիս մեր. ըզլոյս քո իմանալի :

Լոյս ի լուսոյ ծագումն արեգակն արդար. անճառ ծնունդ Հօր Որդի. յառաջ քան զարև անուն քո գովեալ ընդ Հօր. Ի ծագել :

Լոյս ի Հօրէ բղխումն աղբիւր բարութեան. Հոգի սուրբ Աստուծոյ. մանկունք եկեղեցւոյ ընդ հրեշտակս ըզքեզ բարեբանեն. Ի ծագել :

Լոյս Երրեակ և մի անբաժանելի. սուրբ Երրորդութիւն. զքեզ ընդ երկնայնոցն երկրածինքըս միշտ փառաւորեմք. Ի ծագել :

ՑՈՐԴՈՐԱԿ

Անեղանելիդ Աստուած հայր ամենակալ. ընկալ զաղաչանըս մեր քոց պաշտօնէից :

Ի Հօրէ ծագումն անճառ արեգակն արդար. ծագեա ի յանձինըս մեր զլոյսդ ողորմութեան :

Ի Հօրէ բղխեալ Հոգի աղբիւր բարութեան. լուսով քով լցո ըզմեզ յայսմ առաւօտուս :

Երեք անձինք և մի բնութիւն. մի աստուածութիւն. զքեզ խոստովանիմք յաւէտ սուրբ Երրորդութիւն :

ՄԱՂԹԱՆՔ

Լուսովդ քո Քրիստոս ամենեքեան լուսաւորեցաք, և ի սուրբ խաչ քո Փրկիչ հաւատացեալքս ապաւինեցաք : Լուր մեզ Աստուած փրկիչ մեր, տուր մեզ զխաղաղութիւն քո, և արա առ մեզ զողորմութիւն քո, մարդասէր Տէր :

ՔԱՐՈԶ

Եւ ևս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք :

Փառաւորեսցուք զամենակալն Աստուած, որ ծագեաց զլոյս առաւօտու յարարածս իւր. ծագեսցէ և այժմ զառատ ողորմութիւն իւր ի վերայ փառաբանչաց անուան իւրոյ : Ամենակալ Տէր Աստուած մեր կեցո և ողորմեա :

՝ Տես ի Զեկուցումն, էջ ԺԶ :

## ԱՂՕԹՔ

Զառաւօտու զաղօթս և զբանաւոր պաշտօնս ընկալ ամենակալ ամենամեծդ Աստուած ի քո անապական և յերկնային խորանսդ ։ Ծագեա առ մեզ զարդարութեան և զիմաստութեան զլոյս քո . արա զմեզ որդիս լուսոյ և որդիս տուընջեան, որպէս զի ի գալ աւուրս՝ երկիւղածութեամբ վարեսցուք զկեանս մեր, և առանց գայթակղութեան կատարեսցուք ։ Զի դու ես օգնական և փրկիչ մեր . և քեզ վայելէ փառք իշխանութիւն և պատիւ ։

## ՍԱՂՄՈՍ ԻԲ

Տէր հովուեսցէ զիս, և ինձ ինչ ոչ պակասեսցէ ։

Ի վայրի դալարւոջ անդ բնակեցոյց զիս, և առ ջուրս հանգստեան սնոյց զիս ։

Դարձոյց զանձն իմ առ իս, և առաջնորդեաց ինձ ի ճանապարհս արդարութեան վասն անուան իւրոյ ։

Թէպէտ և գնացից ես ի մէջ ստուերաց մահու, ոչ երկեայց ի չարէ՝ զի դու Տէր ընդ իս ես ։

Ցուպ քո և գաւազան՝ նոքա մխիթարեցին զիս ։

Պատրաստ արարեր առաջի իմ զսեղան՝ ակն յանդիման նեղչաց իմոց ։

Օծեր իւղով զգլուխ իմ, բաժակ քո որպէս անապակ արբեցոյց զիս ։

Ողորմութիւն քո Տէր զհետ իմ եկեսցէ զամենայն աւուրս կենաց իմոց, բնակել ինձ ի տան Տեառն ընդ երկայն աւուրս ։

Ցոյց ինձ ճանապարհ յոր գնացից, զի առ քեզ Տէր համբարձի զանձն իմ ։

Փրկեա զիս ի թշնամեաց իմոց, Տէր, զի զքեզ ապաւէն ինձ արարի ։

Ուսո ինձ առնել զկամս քո, զի դու ես Աստուած իմ ։

Հոգի քո բարի առաջնորդեսցէ ինձ յերկիր ուղիղ ։

Վասն անուան քո Տէր կեցուսցես զիս արդարութեամբ քով, հանցես ի նեղութենէ զանձն իմ ։

Ողորմութեամբ քով սատակեսցես զթշնամիս իմ, և կորուսցես զամենայն նեղիչս անձին իմոյ, զի ես ծառայ քո եմ ։

Աստուած մեր ապաւէն և զօրութիւն, օգնական ի վերայ նեղութեանց որ գտին զմեզ յոյժ ։

Digitized by Google

Վասն այսորիկ ոչ երկիցուք մեք ի խռովել երկրի, ի փոփոխել լերանց ի սիրտս ծովու ։

Գոչեցին և խռովեցան ջուրք նոցա, խռովեցան լերինք ի զօրութենէ նորա ։

Գնացք գետոց ուրախ առնեն զքաղաքն Աստուծոյ, և սուրբ արար զյարկս իւր Բարձրեալն ։

Աստուած ի մէջ նորա՝ և նոքա մի՛ սասանեսցին. օգնեսցէ նոցա Աստուած ի վաղորդայնէ մինչև ի վաղորդայն ։

Խռովեցան հեթանոսք, և խոնարհեցան թագաւորութիւնք. ետ զձայն իւր Բարձրեալն՝ և խռովեցաւ երկիր ։

Տէր զօրութեանց ընդ մեզ, ընդունելի է մեր Աստուած Յակովբայ ։

Եկայք և տեսէք զգործս Աստուծոյ, որ արար զնշանս և զարուեստս ի վերայ երկրի ։

Եհար զպատերազմ ի ծագաց մինչև ի ծագս երկրի. զաղեղունս փշրեաց, զզէնս խորտակեաց և զասպարս այրեաց հրով ։

Կանխեցէք և ծաներուք զի ես եմ Աստուած. բարձր եղէց ի հեթանոսս, և բարձրացայց ի վերայ երկրի ։

Տէր զօրութեանց ընդ մեզ, ընդունելի է մեր Աստուած Յակովբայ ։

Աստուած յօգնել ինձ նայեա, և Տէր յընկերել ինձ փութա ։

Ամաչեսցեն և յամօթ լիցին որք խնդրէին զանձն իմ, դարձցին յետս և ամաչեսցեն որք խորհէին ինձ չար ։

Դարձցին առժամայն ամաչեցեալ՝ որ ասէին ինձ վաշ վաշ ։

Ցնծասցեն և ուրախ լիցին ի քեզ ամենեքեան որ խնդրեն զքեզ Տէր ։

Ասասցեն յամենայն ժամ՝ մեծ է Աստուած, որք սիրեն զփրկութիւնս քո ։

Ես աղքատ և տնանկ եմ, Աստուած օգնեա ինձ. օգնական և փրկիչ իմ ես դու, Տէր իմ մի՛ յամենար ։

Տուր զօրութիւն ծառայի քո, կեցո զորդի աղախնոյ քո, և արա առ իս նշան բարութեան ։

Տեսցեն ատելիք իմ և ամաչեսցեն, զի դու Տէր օգնեցեր ինձ և մխիթարեցեր զիս ։

Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն ։ Այժմ և միշտ ։

Digitized by Google

### ՆՐԳ

Ճանա ա : ա ա պարհ. Եւ ճըշմարտու ու-թիւն եւ կեա : նք Քրի ստո ս. առա ա ջնոր-դեա հո գւոց մերոց յերկրէ. Եւլա ինե լ յերկի նս ։

Դո ս : ա ա ւռն. կե նա : ա : ց մը-տի : ց Յի սուս. մո ա յծ եւ ըզմեզ առ Հայր քո՝ եւ Հոգի. Երգել մի շտ ըզփա ռս ։

### ՑՈՐԴՈՐԱԿ

Ճանապարհ բարի Քրիստոս եւ ճըշմարտութիւն. առաջնորդ հոգւոց մերոց յերկրէ ի յերկինս ։

Դուռըն կենաց մըտից Յիսուս Աստուած ճըշմարիտ. մո՛յծ և զմեզ առ Հայրըդ քո. Հոգւովըդ սըրբով ։

### ՄԱՂԹԱՆՔ

Տէր ուղղեա զգնացս մեր ի ճանապարհս խաղաղու-թեան. Տէր ուղղեա և առաջնորդեա հոգւոց մերոց և ամենայն հաւատացելոց գնալ յարդարութեան ճանա-պարհն և ի կեանս յաւիտենից ։

### ՔԱՐՈԶ

Աղաչեսցուք զամենակալն Աստուած՝ զի յաջողեսցէ ուղղեսցէ. զճանապարհս ծառայից իւրոց ի բարի և ի խաղաղութիւն ։ Ամենակալ Տէր Աստուած մեր, կեցո և ողորմեա ։

### ԱՂՕԹՔ

Առաջնորդ կենաց և պարգևիչ խաղաղութեան Քրիս-տոս Աստուած մեր, առաջնորդեա մեզ գնալ ի ճանա-պարհս քո արդարութեամբ. և խաղաղութեամբ ժամանել ի նաւահանգիստն կենաց և փրկութեան՝ շնորհօք ողոր-մութեան քո ։ Զի դու ես օգնական և փրկիչ մեր, և քեզ վայելէ փառք իշխանութիւն և պատիւ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն ։

Digitized by Google

Աղօթք առաւուրց պահոց, յորս պատարագ ոչ լինի ։

Օրհնեալ ես Տէր Աստուած փրկիչ մեր, որ յամենայն ժամ ընդ մեզ ես և ոչ երբեք թողուս ի ձեռանէ քումմէ զայնոսիկ՝ որք հաւատով և ճշմարտութեամբ կարդան առ քեզ։ Աղաչեմք և խնդրեմք ի քէն Տէր, ճանապարհորդակից լեր ծառայից քոց քոյին վերակացութեամբդ պահելով ի խաղաղութեան. և առաջնորդեա մեզ միւսանգամ խաղաղութեամբ և խնդութեամբ հասանել յիւրաքանչիւր ի բնակութիւնս ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր, որում վայելէ փառք իշխանութիւն և պատիւ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն ։

Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս. ամէն ։

Հայր մեր որ յերկինս՝ սուրբ եղիցի անուն քո. եկես ։



## ԿԱՐԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ

# ՀԱՍԱՐԱԿԱՑ ԱՂՕԹԻՑ

## ԵՐՐՈՐԴ ԺԱՄՈՒՆ

### ՈՐ ԿԱՏԱՐԻ Ի ԴԷՄՍ ԻՋՄԱՆ ՀՈԳՒՈՅՆ ՍՐԲՈՅ ԵՒ Ի ԽՈՐՀՈՒՐԴ ՆԱԽԱՄՕՐՆ ՃԱՇԱԿՄԱՆ ԵՒ ԱՋԱՏՈՒԹԵԱՆՆ ՔՐԻՍՏՈՍԻ



*Օրհնեալ Հոգիդ սուրբ Աստուած ճշմարիտ. ամէն ։*

ՍԱՂՄՈՍ Ծ

*Ողորմեա ինձ Աստուած ըստ մեծի ողորմութեան քում, ըստ բազում գթութեան քում քաւեա զանօրէնութիւնս իմ։*

*Առաւել լուա զիս յանօրէնութենէ իմմէ, և ի մեղաց իմոց սուրբ արա զիս ։*

*Զանօրէնութիւնս իմ ես ինձէն գիտեմ, և մեղք իմ առաջի իմ են յամենայն ժամ ։*

*Քեզ միայն մեղայ Տէր, և չար առաջի քո արարի։*

*Որպէս արդար եղիցես ի բանս քո, և յաղթեսցես ի դատելն քո ։*

*Անօրէնութեամբ յղացաւ, և ի մեղս ծնաւ զիս մայր իմ։*

*Դու Տէր զճշմարտութիւն սիրեցեր. զանյայտս և զծածկեալս իմաստութեամբ քով յայտնեցեր ինձ ։*

*Ցօղեա յիս մշտկաւ և սուրբ եղէց, լուա և քան զձիւն սպիտակ եղէց ։*

*Լսելի արա ինձ զցնծութիւն և զուրախութիւն, և ցնծասցեն ոսկերք իմ տառապեալք ։*

*Դարձո զերեսս քո ի մեղաց իմոց, և զամենայն անօրէնութիւնս իմ քաւեա յինէն ։*

*Սիրտ սուրբ հաստատեա յիս Աստուած, և հոգի ուղիղ նորոգեա ի փորի իմում։*

*Մի՛ ընկենուր զիս Տէր յերեսաց քոց, և զՀոգի քո սուրբ մի՛ հաներ յինէն ։*

Digitized by Google

Տուր ինձ ցնծութիւն փրկութեան, և հոգւով պետութեան քո հաստատեա զիս ։

Ուսուցից անօրինաց զճանապարհս քո, և ամպարիշտք առ քեզ դարձցին ։

Փրկեա զիս յարենէ Աստուած, Աստուած փրկութեան իմոյ. ցնծասցէ լեզու իմ յարդարութեան քում ։

Տէր եթէ զշրթունս իմ բանաս, բերան իմ երգեսցէ զօրհնութիւնս քո ։

Թէ կամեցեալ էիր՝ պատարագս մատուցանէաք. բայց դու ընդ ողջակէզս իսկ ոչ հաճեցար ։

Պատարագ Աստուծոյ՝ հոգի խոնարհ. զսիրտ սուրբ և զհոգի խոնարհ՝ Աստուած ոչ արհամարհէ ։

Բարի արա Տէր կամօք քովք Սիովնի, և շինեսցին պարիսպքն Երուսաղեմի ։

Յայնժամ հաճեսցիս ընդ պատարագս արդարութեան, ուխտից պատարագս հանցեն ի սեղան քո զուարակս ։

Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն ։ Այժմ և միշտ ։

Երգ Երրորդ ժամու ասասըն չինչ ողորմեայն ։

Դկ. Օրհնեմք ըզքեզ Հայր անըսկիզբն էից էակ ի յանգոյից . բարձեր ձեռօք նիւթ ի հողոյ և ստեղծեր մարդ ի պատկեր քո . գլուխն ոտից խոնարհեցաւ զի զպատուիրան քո մոռացաւ . դարձեալ ասեմք առ անսա-ակին թէ հայր մեղայ քեզ ի յերկինս ։

Ներկնաւորացն անքննելի եղեր մարդկան տեսանելի . զգեցար պատկեր հողեղինի պատկերըդ Հօր անփոխելի . ելեր յերրորդ ժամ ի խաչին վասն Ադամայ նախաստեղծին . ընդ աւազակին քեւմ խաչակցին արժանացո ըզմեզ դրախտին ։

Թագաւոր թագաւորաց առատաբուղխ Հոգւոյ շնորհաց . ժողովելոցն ի վերնատանն առաքելոցն երկոտասան . ի հրոյ լեզուս երեւեցար յոգիս նոցա վերանըստար . լուր յանուն քո ժողովելոցս էջ եւ առ մեզ յերրորդ ժամուս ։

Digitized by Google

## ՄԱՂԹԱՆՔ

*Յամենայն ժամ աղաչանք իմ այս են, ի մեղաց իմոց սուրբ արա զիս Տէր, և յօտարէն պահեա զծառայս քո մարդասէր Տէր ։*

*Եւ ևս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք. ընկալ կեցո և ողորմեա ։*

*Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից ։*

## ՔԱՐՈԶ ՄԵԾԻ ՊԱՀՈՑՆ

### Ի Յովհաննու Մանդակունւոյ ասացեալ ։

*Միաբան ամենեքեան գոհացարուք զմարդասիրէն Աստուծոյ և զփրկչէն մերմէ Յիսուսէ Քրիստոսէ, որ ազատեաց զազգս մարդկան ի դատապարտութենէ անիծիցն, և եբարձ զմեղս աշխարհի ի ժամու յայսմիկ խաչիւն իւրով սրբով և շնորհեաց առատապէս զպարգևս Հոգւոյն սրբոյ երանելի առաքելոցն ։ Խնդրեսցուք հաւատով, զի զմեզ զամենեսեան արասցէ հաղորդս մեծամեծաց և աստուածային բարեացն այնոցիկ, աղօթիւք և բարեխօսութեամբ ամենայն սրբոց՝ որք աստ և ընդ ամենայն տիեզերս ։ Որպէս զի անարատ վարուք և ճշմարիտ առաքինութեամբ կացեալք ըստ կամաց Նորա յայսմ աշխարհիս, մասն և վիճակ ժառանգութեան ընկալցուք ընդ ամենայն սուրբս Նորա՝ զբնակութիւն յաւիտենական և երկնային խորանացն. զոր խոստացաւ սիրելեաց իւրոց ճշմարիտն Աստուած Յիսուս Քրիստոս ։ Տէր մեր կեցո և ողորմեա ։*

*Զժամս և զառաջակայ օրս խաղաղութեամբ անցուցանել հաւատով ի Տեառնէ խնդրեսցուք ։*

*Զհրեշտակ խաղաղ ։ Զքաւութիւն ։ Զսրբոյ խաչին ։*

*Եւ ևս միաբան ։ Զանձինս մեր ։ Ողորմեաց մեզ ։*

## ԱՂՕԹՔ

*Որ ի քրովբէական և յանպատում հանգուցեալ ես աթոռ, և այցելու ես միշտ արարածոց քոց, որ և ի ժամու յայսմիկ հեղեր յերանելի առաքեալսն զշնորհս Հոգւոյդ սրբոյ. դու Տէր յառաջակայ ժամուս, և յաւէտ մինչև ի կենցաղոյս աւարտումն տպաւորեալ միացո զմեզ*

Digitized by Google

ընդ ամենայն բարեգործութեան յորդորմունս, և խոստացելոց բարեացդ հաղորդս լինել զմեզ արժանի արա Տէր մեր և փրկիչ Յիսուս Քրիստոս, որ ես օրհնեալ ընդ Հօր և ընդ սուրբ Հոգւոյդ, այժմ։

Խաղաղութիւն ամենեցուն։

Որ էիր յառաջ քան զյաւիտեանս Բանդ Աստուած էակից Հօր և արարչակից սուրբ Հոգւոյդ. որ և զնախաստեղծին պատուիրանազանցութիւն պտղոյն ճաշակման՝ նշանաւ ամենայաղթ խաչիւ քո ի ժամուս յայսմիկ ենթարկեալ ի կենդանութիւն փոխեցեր, և զանօրէնութիւնս մեր ի նմա բեւեռեալ՝ կեանս անապական և նորոգումն կենաց յուսացելոց ի քեզ խոստացար։ Որոց մասնաւորիլ և զմեզ արժանի արա Տէր մեր և փրկիչ Յիսուս Քրիստոս, որ ես օրհնեալ ընդ Հօր և ընդ սուրբ Հոգւոյդ, այժմ։

Ս Ա Ղ Մ Ո Ս

Տէր Աստուած օրհնեալ, օրհնեալ Տէր զօրհանապազ։
Աստուած մեր Աստուած կենարար, և նա փրկեսցէ զմեզ։
Տէր Աստուած օրհնեալ, օրհնեալ Տէր զօրհանապազ, առաջնորդեսցէ մեզ Աստուած փրկիչ մեր։

Ք Ա Ր Ո Զ

Խնդրեսցուք հաւատով ի Տեառնէ վասն ճանապարհորդաց հարց և եղբարց մերոց, որք ընդ ծով և ընդ ցամաք գնասցեն. որպէս զի առաջնորդեսցէ նոցա, խաղաղութեամբ պահեսցէ, և տարեալ հասուսցէ յիւրաքանչիւր տեղիս Տէր Աստուած մեր։ Վասն զի նա ինքն է առաջնորդ կենաց և յոյս փրկութեան, որ յաջողէ ծառայից իւրոց խաղաղութեամբ հասանել ի նաւահանգիստն կենաց և փրկութեան։ Ամենակալ Տէր Աստուած մեր, կեցո և ողորմեա։

Ա Ղ Օ Թ Ք

Առաջնորդեա մեզ Տէր Աստուած մեր, և ուսո մեզ գնալ ի ճանապարհս քո արդարութեամբ, պահեա ի խաղաղութեան զկեանս մեր և զգնացս ի հաճոյս քո. ժամանեցո զհոգւոր և զմարմնաւոր ընթացս ծառայից քոց անարատ ճանապարհաւդ յաւիտենական ի կեանսդ։ Շնոր-

Digitized by Google

հաւ միածնի քո Տեառն մերոյ և փրկչին Յիսուսի Քրիս-
տոսի, որ եղև մեզ առաջնորդ կենաց և յոյս փրկու-
թեան ։ Ընդ որում օրհնեալ ես Հայր ամենակալ հան-
դերձ կենդանարար և ազատիչ սուրբ Հոգւովդ, այժմ և
միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն ։

Ցիշեա Տէր զպաշտօնեայս քո, զծնողսն մեր ։ 175 ։

Բարերար և բազումողորմ Աստուած, քո անմոռաց ։

ՍԱՂՄՈՍ ԻԲ

Տէր հովուեսցէ զիս, և ինձ ինչ ոչ պակասեսցէ ։

Ի վայրի դալարւոջ անդ բնակեցոյց զիս, և առ ջուրս
հանգստեան սնոյց զիս ։

Դարձոյց զանձն իմ առ իս, և առաջնորդեաց ինձ ի
ճանապարհս արդարութեան վասն անուան իւրոյ ։

Թէպէտ և գնացից ես ի մէջ ստուերաց մահու, ոչ
երկեայց ի չարէ՝ զի դու Տէր ընդ իս ես ։

Ցուպ քո և գաւազան, նոքա մխիթարեսցեն զիս ։

Պատրաստ արարեր առաջի իմ զսեղան, ակն յանդիման
նեղչաց իմոց ։

Օծեր իւղով զգլուխ իմ, բաժակ քո որպէս անապակ
արբեցոյց զիս ։

Ողորմութիւն քո Տէր զհետ իմ եկեսցէ զամենայն ա-
ւուրս կենաց իմոց, բնակել ինձ ի տան Տեառն ընդ
երկայն աւուրս ։

Ցոյց ինձ ճանապարհ՝ յոր գնացից, զի առ քեզ Տէր
համբարձի զանձն իմ ։

Փրկեա զիս ի թշնամեաց իմոց Տէր, զի զքեզ ապա-
ւէն ինձ արարի ։

Ուսո ինձ առնել զկամս քո, զի դու ես Աստուած իմ ։

Հոգի քո բարի առաջնորդեսցէ ինձ յերկիր ուղիղ ։

Վասն անուան քո Տէր կեցուսցես զիս արդարութեամբ
քով, հանցես ի նեղութենէ զանձն իմ ։

Ողորմութեամբ քով սատակեսցես զթշնամիս իմ, և
կորուսցես զամենայն նեղիչս անձին իմոյ, զի ես ծառայ
քո եմ ։

Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն ։ Այժմ և միշտ ։

ՔԱՐՈԶ

Եւ ևս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք ։

Գոհաբանելով աղաչեսցուք զբարերար Հոգին Աստուած

և խնդրեսցուք զողորմութիւն ի Նմանէ, զի անցուսցէ ի մէնջ զցասումն պատուհասի յանցանաց մերոց բարերա-րութեամբն իւրով ։ Ամենակալ Տէր Աստուած մեր, կեցո և ողորմեա ։

ԱՂՕԹՔ

Խաղաղութեամբ քով, Հոգիդ սուրբ Աստուած ճշմա-րիտ, որ ի վեր է քան կամենայն միտս և զխորհուրդս, մխիթարեա զանձինս ծառայից քոց ընդունելով զաղա-չանս մեր. անցո ի մէնջ զցասումն պատուհասի յանցա-նաց մերոց բարերարութեամբ քով ։ Ներեա և լուր մեզ, քաւեա և թող զմեղս մեր. արժանաւորեա գոհութեամբ փառաւորել զքեզ ընդ Հօր և ընդ Որդւոյ միածնի, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն ։

Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս ։ Հայր մեր ։



# ԿԱՐԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ
# ՀԱՍԱՐԱԿԱՑ ԱՂՕԹԻՑ
## ՎԵՑԵՐՈՐԴԻ ԺԱՄՈՒՆ
### ՈՐ ԿԱՏԱՐԻ Ի ԴԷՄՍ ՀՕՐ ԱՍՏՈՒԾՈՅ, ԱՅԼ ԵՒ Ի ԴԷՄՍ ՉԱՐՉԱՐԱՆԱՑ ԵՒ ԽԱՉԵԼՈՒԹԵԱՆ ՈՐԴՒՈՅՆ ԱՍՏՈՒԾՈՅ



Օրհնեալ Հայր սուրբ Աստուած ճշմարիտ. ամէն ։

ՍԱՂՄՈՍ Ծ

Ողորմեա ինձ Աստուած ըստ մեծի ողորմութեան ։ 186 ։

ԵՐԳ ՎԵՑԵՐՈՐԴԻ ԺԱՄՈՒՆ

Դկ. Խաւարեցաւ լոյսն արեւուն ի վեցերորդ ժամ ուրբաթուն. ծանոյց թէ լոյսն արարչական նըսեմացոյց զլոյսն եղական. կանխեալ ըղջեգ մերկ ի խաչին քողով ստուերաւըն ծածկէին. հեղըքեա ի մէնջ ըզծանրու-թիւն շըրջող դիւին միջօրէի ։

Զանձրութիւն մարտ այսուն չարի որ յայս ժամու պատերազմի. ղօղեալ յոգւոց մեր հերքեսցի քո նշանաւ սրբոյ խաչին. ճշմարտութեան քո ճառագայթ զառ ի յերկնից անկեալ փայլակն. մերժեալ ի մէնջ հալածեսցէ եւ զմեզ լուսով քո վառեսցէ.

Ցայս միջօրեայ տուընջեան ժամուս վայելչական աչաց մարմնոյս. նետիւք գաղտնեաց մի խոցեսցուք ի խաւարէն որ ի ծածուկ. շուրջանակի բանակեսցեն ըզմեօք բանակք հրեշտակաց. որք պարակից մեզ լինելով ըզքեզ ընդ Հօր փառաւորելով:

ՄԱՂԹԱՆՔ

Ցամենայն ժամ աղաչանք իմ այս են, ի մեղաց իմոց սուրբ արա զիս Տէր, և յօտարէն պահեա զծառայս քո մարդասէր Տէր:

Եւ ես խաղաղութեան զՏէր աղաչեսցուք ընկալ կեցո:
Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն:

ՔԱՐՈԶ ՄԵԾԻ ՊԱՀՈՑՆ

Արթուն մտօք և անզբօս խորհրդով կացցուք միաբան յաղօթս առաջի Տեառն մերոյ և փրկչին Յիսուսի Քրիստոսի: Հաւատով խնդրեսցուք ի նմանէ զհրեշտակ խաղաղութեան պահապան անձանց մերոց, որ եկեալ բանակեսցէ շուրջ զմեօք և աներկիւղ պահեսցէ զմեզ յամենայն հրեղէն նետից սատանայի, որ թռչի ի տուէ, յիրաց խաւարային գնացից՝ ի գայթակղութենէ դիւին ի հասարակ աւուր: Յորմէ զգուշութեամբ պահելով աղօթիւք և բարեխօսութեամբ ամենայն սրբոց, շնորհեսցէ մեզ մարդասէրն Աստուած կեալ առաքինութեամբ ի փըրկութիւն անձանց մերոց՝ ի պատիւ և ի փառս կենդանացուցիչ անուան իւրոյ: Յոյս հաղորդութեան ընկալցուք ի յայտնութեան միածնի Որդւոյն Աստուծոյ, կերպարանակից առնել զմարմին խոնարհութեան մերոյ ըստ նմանութեան մարմնոյ փառաց իւրոյ: Վասն զի զայս խոստացաւ սիրելեաց իւրոց ճշմարիտն Աստուած Յիսուս Քրիստոս: Տէր մեր, կեցո և ողորմեա:

Զժամս և զառաջիկայ օրս խաղ: Զհրեշտակ խաղ:
Զքաւութիւն: Զսրբոյ: Եւ ես: Զանձինս: Ողորմեաց:

Digitized by Google

### ԱՂՕԹՔ

Զգեցո մեզ Տէր Աստուած մեր զէն արդարութեան՝ զօրաւոր և յաղթող լինել ընդդէմ սատանայական պատերազմաց. և զամենայն հրեղէն նետս նորա շիջուցանելով անկասկած լիցուք յիրաց խաւարային գնացից՝ ի դայթակղութենէ դիւին ի հասարակ աւուր ։ Եւ զգաստացեալք վայելչական տուընջեամբս, առաքինութեամբ կացցուք ի փրկութիւն անձանց մերոց՝ ի պատիւ և ի փառս սրբոյ Երրորդութեանդ, այժմ և միշտ և յաւիտ ։

Խաղաղութիւն ամենեցուն ։

Երկնաւոր խաղաղութեամբդ քով պարսպեալ պահեա զանձինս մեր Տէր զօրութեանց ։ Վասն զի դու ես Աստուած խաղաղութեան, և բաց ի քէն զայլ ոք ոչ գիտեմք, և զանուն քո ամենազօր կարդամք յօգնականութիւն անձանց մերոց ։ Նայեաց յերկրպագութիւնս մեր, և ուսո մեզ առնել զարդարութիւն ճշմարտութեան ։ Եւ գոհութեամբ փառաւորեսցուք զՀայր և զՈրդի և զսուրբ Հոգի, այժմ և միշտ և յաւիտեանս ։

### ՍԱՂՄՈՍ

Տէր մի՛ յիշեր զմեղս մեր զառաջինս. վաղվաղեսցէ առ մեզ ողորմութիւն քո Տէր, զի աղքատացաք յոյժ ։

Օգնեա մեզ Աստուած փրկիչ մեր վասն մեծի փառաց անուան քո ։

Տէր փրկեա զմեզ և քաւեա զմեղս մեր վասն անուան քո ։

### ՔԱՐՈԶ

Վասն հիւանդաց և ամենայն վշտացելոց աղաչեսցուք զփրկիչն մեր Քրիստոս, զի ողորմեսցի ըստ մեծի ողորմութեան իւրում, և բժշկեսցէ զախտս և զհիւանդութիւնս հոգւոց և մարմնոց ծառայից իւրոց, և կատարեալ առողջութեամբ հաստատեսցէ զամենեսեան ի մշտնջենաւոր և յանախտ կեանս ։ Որ առաքեցաւ ի Հօրէ ի բժշկութիւն ազգի մարդկան միածին Որդին Աստուծոյ Տէր մեր և փրկիչ Յիսուս Քրիստոս ։ Կեցո և ողորմեա ։

### ԱՂՕԹՔ

Փարատեա զցաւս և բժշկեա զհիւանդութիւնս ի ժողովրդենէ քումմէ Տէր Աստուած մեր, և շնորհեա ամենեցուն



Digitized by Google

զկատարեալ առողջութիւն նշանաւ ամենայաղթ խաչիւ քով՝ որով բարձեր զտկարութիւն ազգի մարդկան, և դատապարտեցեր զթշնամին կենաց և փրկութեան մերոյ ։ Դու ես կեանք մեր և փրկութիւն, բարերար և բազումողորմ Աստուած, որ միայն կարող ես թողուլ զմեղս և մերժել զախտս և զհիւանդութիւնս ի մէնջ, որում յայտնի են պէտք կարեաց մերոց. պարգևիչդ բարեաց պարգևեա զառատ ողորմութիւն քո ի վերայ արարածոց քոց՝ ըստ իւրաքանչիւր պիտոյից, յորոց հանապազ փառաւորեալ գովի ամենասուրբ Երրորդութիւնդ, այժմ և միշտ ։

Ցիշեա Տէր զպաշտօն ։ — Բարերար և բազումող ։ 175։

ՍԱՂՄՈՍ Խ

Երանի որ խորհի զաղքատն և զտնանկն, յաւուր չարի փրկէ զնա Տէր ։

Տէր փրկէ զնա և կեցուցանէ, երանելի առնէ զնա ի վերայ երկրի, և ոչ մատնէ զնա ի ձեռս թշնամեաց իւրոց ։

Տէր օգնական է նմա ի մահիճս ցաւոց իւրոց, զամենայն անկողինս նորա դարձուցանէ ի հիւանդութենէ նորա ։

Ես ասացի Տէր ողորմեա ինձ, և բժշկեա զանձն իմ. ես մեղայ քեզ ։

Որ բնակեալ է յօգնութիւն Բարձրելոյն, ընդ հովանեաւ Աստուծոյ յերկինս հանգիցէ ։

Ասասցէ Տեառն, ընդունելի իմ ես, ապաւէն իմ Աստուած, և ես յուսամ ի նա ։

Նա փրկեսցէ զիս յորոգայթէ որսողին, և ի բանից խռովութենէ ։

Ի թիկնամէջս իւր ընկալցի զքեզ, ի հովանի թևոց նորա յուսասցիս ։

Որպէս զէն՝ շուրջ եղիցի զքև ճշմարտութիւն նորա ։

Ոչ երկիցես դու յերկիւղէ գիշերի, և ոչ ի նետէ որ թռչի ի տուէ ։

Ցիրէ որ շրջի ի խաւարի, ի գայթակղութենէ դիւին ի հասարակ աւուր ։

Անկցին ի կողմանէ քումմէ հազարք և բիւրք ընդ աջմէ քումմէ, որ առ քեզ ինչ ոչ մերձեսցին ։

Բայց միայն աչօք քովք հայեսցիս դու, և զհատուցումն մեղաւորաց տեսցես. զի դու Տէր յոյս իմ ես ։

Զբարձրեալն արարեր քեզ ապաւէն. ոչ հասցեն առ քեզ չարք, և տանջանք մի՛ մերձեսցին ի յարկս քո։

Հրեշտակաց իւրոց պատուիրեալ է վասն քո, պահել զքեզ յամենայն ճանապարհս քո ։

Ի բազուկս իւրեանց ընկալցին զքեզ, զի մի՛ երբեք հարցես զքարի զոտն քո ։

Ի վերայ իժից և քարբից գնասցես դու, առ ոտն կոխեսցես զառիւծն և զվիշապն ։

Քանզի յիս յուսացաւ և փրկեցից զնա, հովանի եղէց նմա, զի ծանեաւ զանուն իմ։

Կարդասցէ առ իս՝ և ես լուայց նմա, և առ նմա եղէց ի նեղութեան ։

Փրկեցից և փառաւոր արարից զնա, երկայնաւուրբք լցուցից և ցուցից նմա զփրկութիւն իմ։

Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն ։ Այժմ և միշտ ։

ՔԱՐՈԶ

Եւ ևս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք ։

Խնդրեսցուք հաւատով ի Հօրէ վասն քաւութեան մեղաց, և թողութեան յանցանաց, փրկելոյ զմեզ ի վշտաց և ի նեղութեանց, իջանելոյ ի վերայ մեր ողորմութեան և գթութեան Տեառն Աստուծոյ ամենակալին։ Կեցո և ողորմեա ։

ԱՂՕԹՔ

Հայր գթութեանց, և Աստուած ամենայն մխիթարութեանց՝ որ մխիթարես զմեզ յամենայն նեղութեան մերում, լուր և այժմ ձայնի պաղատանաց ծառայից քոց ընդունելով զաղաչանս մեր. անցո ի մէնջ զցասումն պատուհասի յանցանաց մերոց բարերարութեամբ քով ։ Ներեա և լուր մեզ, քաւեա և թող զմեղս մեր. արժանաւորեա գոհութեամբ փառաւորել զքեզ ընդ Որդւոյ և ընդ սրբոյ Հոգւոյդ, այժմ։

Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս. ամէն ։

Հայր մեր որ յերկինս ։

---

# ԿԱՐԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ

# ՀԱՍԱՐԱԿԱՑ ԱՂՕԹԻՑ

## ԻՆՆԵՐՈՐԴ ԺԱՄՈՒՆ

### ՈՐ ԿԱՏԱՐԻ Ի ԴԷՄՍ ՈՐԴԻՈՑՆ ԱՍՏՈՒԾՈՅ

### ԱՅԼ ԵՒ ՄԱՀՈՒԱՆ ԵՒ ԹԱՂԱԿԱՆ ՀՈԳՒՈՑՆ ԱՒԱՆԴՄԱՆՆ



Օրհնեալ Որդիդ սուրբ Աստուած ճշմարիտ. ամէն ։

ՍԱՂՄՈՍ Ծ

Ողորմեա ինձ Աստուած ըստ մեծի ողորմութեան ։ 186 ։

ԵՐԳ

ԴԿ. Զարչարակցեալ քեզ տիւ լուսոյ երեք ժամու խաւարելոյ. պայծառացեալ յիններորդին ի տեսլ լըրման մահու ստուերին. Ջահերդ լուսոյ մեծապայծառ աւանդեցեր զհոգիդ առ Հայր. ուստի կըցորդ քեզ ի յերկինս ըզմեզ ուղղեա Հոգւով քոյին ։

Սանդարամետըլք սարսեցին զկապեալ հոգիսն արձակեցին. վէմք ի վիմէդ պատառեցան ի տապանաց մեռեալք յարեան. տարերք երկրի տատանէին և աշխարհի սիւնք դողային. բամեալքս առ քեզ պաղատեսցուք զի ընդ արդարսըն դասեսցուք ։

Ցուցեր յայնժամ ըզքանչելիս և այժըմ մեզ ողորմեսցիս. ւիւծեալ բնութիւնս քեւ ողջացաւ շնորհեա եւ մեզ լինել անցաւ. փոխման մահու քո կենարար կեցո ըզմեզ Տէր բարերար. քեզ պաղատիմք ըստ աւազակին յիշեա ըզմեզ յօրն անհագին ։

Digitized by Google

### ՄԱՂԹԱՆՔ

Ցամենայն ժամ աղաչանք իմ այս են՝ ի մեղաց իմոց սուրբ արա զիս Տէր, և յօտարէն պահեա զծառայս քո մարդասէր Տէր։

Եւ ես խաղաղութեան զՏէր աղաչեսցուք ընկալ կեցո։

Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ։

### ՔԱՐՈԶ ՄԵԾԻ ԳԱՀՈՅՆ

Սուրբ սրտիւ և հաստատուն հաւատով կացցուք միաբան յաղօթս առաջի Տեառն մերոյ և փրկչին Յիսուսի Քրիստոսի՝ յիշելով զմեծամեծս նորա զանչափ շնորհսն, զհամբերութիւն կենսատու խաչին և զհեղումն ազատեցուցիչ արեան Նորա, և զսոցին նմանս, որ յայսմ ժամու վասն մեր մեղաւորացս կրեաց Նա։ Եւ մեք զայս ամենայն զմտաւ ածելով՝ սրբեսցուք ի մեղաց զխորհուրդս զբանս և զգործս մեր. կատարեսցուք զսրբութիւն անձանց մերոց ահիւն Աստուծոյ։ Մի՛ յապաղեսցուք խոստովան լինել Նմա զմեղս մեր, և խնդրել զթողութիւն մեղաց մերոց, զի մի՛ կորիցուք անապաշխար՝ զյաւիտենական կորուստն։ Այլ մինչ դեռ ժամանակս ի ձեռս է, գործեսցուք զբարիս ի կեանս յայսմիկ՝ օրինակ վարուց մերոց ունելով զամենայն սուրբս և զյաղթող նահատակսն, որք միանգամ ի սկզբանէ հաճոյ եղեն Տեառն և փրկչին բոլորեցունց։ Որոց աղօթիւք և բարեխօսութեամբ շնորհեսցէ մեզ մարդասէրն Աստուած զհաճոյսն իւր և զօգուտն մեր խորհել միշտ և առնել, և անպատում պարգևացն հաղորդս գտանել, զոր խոստացաւ սիրելեաց իւրոց ճշմարիտն Աստուած Յիսուս Քրիստոս։ Տէր մեր կեցո և ողորմեա։

Զժամս և զառաջակայ օրս խաղաղութեամբ անցուցա։

Զհրեշտակ խաղաղ։ Զքաւութիւն։ Զսրբոյ խաչին։

Եւ ես միաբան։ Զանձինս մեր։ Ողորմեաց մեզ։

### ԱՂՕԹՔ

Տէր զօրութեանց, որ կամաւոր մահուամբ քո ի ժամուս յայսմիկ կենդանացուցեր զմեզ ի մեռելութենէ մեղաց մերոց, և բևեռեցեր զկնիք դատապարտութեան մերոյ ի խաչին, և շնորհեցեր ազատութիւն ազգի մարդկան ի ծառայութենէ ապականութեան յազատութիւն

փառաց հեղմամբ արեանդ քոյ սրբոյ, ընկալ և այժմ զաղաչանս մեր, և յաջողեա մեզ ուղիղ հաւատով և առաքինասէր վարուք կալ յայսմ աշխարհիս, և արժանաւոր լինել յաւիտենական և երկնային ուրախութեանցն ընդ ամենայն սուրբս քո, և գոհանալով փառաւորել զքեզ ընդ Հօր և սուրբ Հոգւոյդ, այժմ և։

Խաղաղութիւն ամենեցուն։

Բազումողորմ Աստուած և հաստիչ խաղաղութեան, հաստատեա զանձինս մեր քոյով խաղաղութեամբդ որով ունիս յիւրաքանչիւր կարգի զամենայն արարածս քո՝ ուղիղ հրամանաւդ մատակարարելով. վասն զի այդ իսկ են կամք քո՝ խաղաղական և հոգևոր սիրով կալ մեզ առ միմեանս, և սպասել արթուն մտօք յայտնութեան միածնիդ Աստուծոյ և փրկչիդ մերոյ Յիսուսի Քրիստոսի։ Որում արժանաւորք եղիցուք հանդիպել ամպովք ընդ առաջ Տեառն յօդս. զուարթերես կացցուք յաջմէ քումմէ ընդ սուրբս և ընդ սիրելիս անուանդ քում սրբոյ. և ժառանգեսցուք զպատրաստեալն ի սկզբանէ աշխարհի սըրբոց քոց զարքայութիւնդ։ Եւ ընդ նոսին գոհանալով փառաւորեսցուք զքեզ ընդ Հօր և ամենասուրբ Հոգւոյդ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

ՍԱՂՄՈՍ

Տէր մի՛ մատներ զմեզ ի սպառ վասն անուանդ քում սրբոյ. մի՛ ցրեր զուխտս քո, և մի՛ ի բացեայ առներ զողորմութիւնս քո ի մէնջ։

Վասն Աբրահամու սիրելւոյ քոյ, Իսահակայ ծառայի քոյ և Իսրայելի սրբոյ քոյ։

Տէր մի՛ մատներ զմեզ ի սպառ վասն անուանդ քում սրբոյ. մի՛ ցրեր զուխտս քո, և մի՛ ի բացեայ առներ զողորմութիւնս քո ի մէնջ։

ԵՐԳ

Նահապետին Աբրահամու հայցմամբ ընկալ Տէր զաղաչանս. Եւ ծառային քում Սահակայ խընդրուածովք ի մեզ գթա. Բնատեսին Իսրայելի Սիրով սրբոյն ի մեզ խնայեա. Երեքսըրբեան երիւք սոցին Սըրբեա զհոգի զմիտս եւ զմարմին։

### ՔԱՐՈԶ

Աղաչեսցուք զկենսատու փրկիչն մեր Քրիստոս, որ կամաւոր խաչելութեամբն իւրով զարարածս փրկեաց, և հեղմամբ արեան իւրոյ թողութիւն շնորհեաց յուսացելոց իւրոց։ Ամենակալ Տէր Աստուած մեր, կեցո և ողորմեա։

### ԱՂՕԹՔ

Անկեալ առաջի քոյ բարերար և բազումողորմ Աստուած, աղաչեմք ամենայն սրտիւք մերովք և խնդրեմք զգթութիւն ի քէն. որպէս խոստացար ծառայից քոց և ասացեր, զամենայն զոր ինչ խնդրիցէք հաւատով յանուն Որդւոյ ի Հօրէ՝ տացի ձեզ, շնորհեա և այժմ հաւատացելոցս ի քեզ, և կատարեա ի բարի զխնդրուածս մեր, զի ի քեզ եմք ապաւինեալ. և քո առատ ողորմութեամբդ մխիթարեա զմեզ ի կեանս յայսոսիկ, և առաջնորդեալ հասո յանձառ երկնից արքայութիւնդ, ի փառաբանութիւն և ի պատիւ ամենասուրբ Երրորդութեանդ, այժմ և միշտ և յաւիտեանս։

Ցիշեա Տէր զպաշտօնեայս քո, զծնողսն մեր։ 175։

Բարերար և բազումողորմ Աստուած, քո անմոռաց։

### ՍԱՂՄՈՍ ՃԺԴ

Սիրեցի զի լուիցէ Տէր զձայն աղօթից իմոց. զի խոնարհեցոյց զունկն իւր առ իս, և ես յաւուրս իմ կարդացի առ նա։

Շրջեցան զինև երկունք մահու, և վիշտք դժոխոց գտին զիս։

Զնեղութիւն և զանձկութիւն գտի, և զանուն Տեառն կարդացի։

Ո՛ Տէր փրկեա զանձն իմ. ողորմած Աստուած ողորմի և պահէ զտղայս Տէր։

Ես խոնարհ եղէ և Տէր կեցոյց զիս. դարձ անձն իմ ի հանգիստ քո՛ զի Տէր օգնեաց քեզ։

Փրկեաց զանձն իմ ի մահուանէ, զաչս իմ յարտասուաց, և զոտս իմ ի գայթակղութենէ. հաճոյ եղէց առաջի Տեառն յերկրին կենդանեաց։

Հաւատացի զոր և խօսեցայ, և ես խոնարհ եղէ յոյժ։

Ես ասացի ի զարմանալ իմում՝ թէ ամենայն մարդ սուտ է։

Digitized by Google

Զինչ տաց տրիտուր Տեառն ընդ ամենայնի զոր ետ ինձ: Բաժակ փրկութեան ընկալայց, և զանուն Տեառն կարդացից:

Զաղօթս իմ Տեառն տաց՝ առաջի ամենայն ժողովրդեան Նորա:

Պատուական է առաջի Տեառն մահ սրբոց իւրոց. ո՛ Տէր ես ծառայ քո եմ, ծառայ և որդի աղախնոյ քոյ:

Հատեր զկապանս իմ, քեզ մատուցից պատարագս օրհնութեան, և զանուն Տեառն կարդացից:

Զաղօթս իմ Տեառն տաց առաջի ամենայն ժողովրդեան Նորա, ի գաւիթս տան Տեառն, և ի մէջ քո Երուսաղէմ:

Օրհնեցէք զՏէր ամենայն ազինք, գովեցէք զնա ամենայն ժողովուրդք:

Զօրացի ողորմութիւն Նորա ի վերայ մեր, և ճշմարտութիւն Տեառն մնասցէ յաւիտեան:

Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն: Այժմ և միշտ:

## ՇԱՐԱԿԱՆՔ ՀԱՆԳՍՏԵԱՆ ԸՍՏ ՁԱՅՆԻՆ

### ԱՁ

Ո՛ր ստեղծմամբ ըստ պատկերի քո Տէր պատուեցեր զմեզ. ընկալ եւ այժմ ըզնընջեցեալսն ի քեզ ուղիղ հաւատով. || ըստ մեծի քում ողորմութեան: Ո՛ր շնորհօք սուրբ Հոգւոյն լուսաւորեցեր. յիշատակի իւրեանց զհոգիս նոցա ընկալ մարդասէր. ըստ: Ո՛րք հաղորդեցան մարմնոյ եւ արեան քո Տէր. հանգո զհոգիս նոցա ընդ սուրբս քո Քրիստոս Աստուած. քանզի գինք սուրբ արեան քո են: Միայն օրհնեալդ ի կանայս մայր եւ մինչ կոյս եւ իմանալի լոյս. ծնող արարչին մերոյ անդադար բարեբանեսցուք.

### ԱԿ

°Արարիչ Աստուած և ըստեղծիչ ազգի մարդկան.
|| մի անտես առներ ըզնընջեցեալսն մեր. այլ հանգո զհոգիս նոցա ընդ սուրբս քո: Որդիդ միածին յա-

բութիւն տիեզերաց. մի։ Հոգիդ ճըշմարիտ մը-խիթարիչ սըգաւորաց. մի։ Հոգւոյն ըզքեւ հովա-նացեալ միայն Սըրբուհի ծընար ըզԲանն Աստըւած զանճառելւոյ Հօր ծընունդ. եւ յայտնեցաւ միութիւն Երրորդութեանն։

## ԲՁ

Որ կոչեցեր առ քեզ Տէր ըզտիեզերս ամենայն. ըն-կալ ըզմեր ըզնընջեցեալսն ի գոգ նահապետին Աբրա-համու. Ողորմեա Տէր փըրկիչ և բարերար։ Որ թո-ղութեանց ես տըւող Աստըւած թող ըզմեղըս մեր նըն-ջեցելոցըն կարող յամենայնի և հըզօր. ողորմեա։ Որ լուսատու ես տիեզերաց Քրիստոս Աստըւած լուսաւորեա եւ ըզմեր ըզնընջեցեալսըն լուսով երանաւէտ զըւար-թնոցն. ողորմեա։ Յոյս մեր և ապաւէն մայր Տեառն եւ կոյս սուրբ. որ հուր աստուածութեանն ոչ բոցակի-զեաց զքո սուրբ զորովայն. բարեխօսեա առ Տէր վա-սըն մերոյ փըրկութեան։

## ԲԿ

Որ Որդիդ ես և Բանդ Աստըւած հաւասարակից ընդ Հօր յէութեան առ քեզ կարդամք մարդասէր. Հան-գո զհոգիս նընջեցելոց մեր ընդ սուրբըս քո։ Որ իջեր յերկնից վասըն մեր զառաջինն առեր զյանցանսն Ադամայ. մերով բընութեամբ բարձեր ի վերայ խաչին անարատ ձեռօք. Հանգո։ Որ լուծեր զիշխանութիւն մահու. կամաւորական մահուամբ քո Քրիստոս. բա-նաւորաց զաղաչանս. առաջի քո հեղեալ մաղթեմք. Հանգո։ Տիրուհի անարատ մայր Տեառն եւ կոյս Մա-րիամ. քրովբէական աթոռ ըզքեզ տեսաք ի յերկրի. բարեխօսեա առ Տէր վասըն մերոյ փըրկութեան։

## ԳՋ

Հայր բարեգութ. որ գթացար ի յազգս որդւոց մարդկան. առաքեցեր ըզՄիածինդ ի փրկութիւն ‖ Յիշեա զհոգիս ննջեցելոց մերոց և հանգո ընդ սուրբս քո: Որդիդ միածին որ յարեար ի մեռելոց. ի միւսանգամ գալստեանըն քո յարութիւն մեզ խոստացար. յիշեա: Հոգիդ ճըշմարիտ մըխիթարիչ սըգաւորաց. աղաչանօք սուրբ Աստուածածնին եւ ամենայն քոց սըրբոց. յիշեա: Ի բարեխօսութիւն փութացիր մեզ սուրբ Աստուածածին. առ ի փըրկել ըզժողովուրդս ի մեղաց եւ յապականութենէ:

## ԳԿ

Յանըսկըզբնական ծոցոյ Հօր խոնարհեալ Բանըդ. մարմնացար ի Կուսէն վասըն փըրկութեան մերոյ ‖ աղաչեմք ըզքեզ. զնըննջեցեալսըն մեր ի քեզ ուղիղ հաւատով. յիշեա Տէր յորժամ գաս թագաւորութեամբըդ քո: Անոխակալ քաղցրութեամբ Որդի Աստուծոյ. հաճեցար բառնալ ըզմեղս աշխարհի քո խաչելութեամբըն. աղաչեմք: Կամաւորական մահուամբ քո լուծեր զերկունըս մահու. եւ արժանի արարեր թողութեան յանցանաց քաւիչ քո արեամբ. աղաչեմք: Որ փոխանակ մեղաւորաց ըզմեռանել յանձն առեր. եւ իջանելով ի դըժոխըս փըրկեցեր ի մեղասէր բանտէն ըզգերեալսն. աղաչեմք: Բարեբանեմք զանչափ քո զմարդասիրութիւնդ. որ երեքօրեայ յարուցեալ զկենդանութիւն պարգեւեցեր աշխարհի. աղաչեմք: Մաքուր եւ անբիծ կոյս յետ ծընընդեան. որ մարմնով ծընար զարձակօղն ի կապից մահու. բարեխօս լեր վասն անձանց մերոց. փըրկել ի սպառնալեաց գեհենոյն:

## ԴՁ

Յորժամ հարկանի փող գալըստեան քո Տէր․ յայնժամ զարհուրեալ դողան արարածք ի յահէ քումմէ․ ‖ աղաչեմք ըզքեզ Փըրկիչ․ հանգո և ըզմեր ըննջեցեալսն ընդ սուրբըս քո․ որ միայն ես բազումողորմ ։ Յանհարեկ լուսոյ ծագման քո Տէր․ ցընծան դասք առաքելոցն ի վերայ լուսեղէն ամպոյն․ աղ ։ Անոխակալ բազմագութ ողորմած Տէր․ մի անտես առներ ըզմեղուցեալքըս յահագին աւուրն․ որ միա ։ Որ իջեր ի յերկնից և մարմնացար ի սուրբ կուսէն․ անճառելի քոյին ծնընդեամբդ եւ զմեզ մի անտես առներ․ այլ պահեա պատուականն և սուրբ խաչիւ քո ։

## ԴԿ

Որ թագաւորդ ես յաւիտենից Քրիստոս Աստուած ընկալ ըզծառայս քո ի բարի․ ‖ ե․․․ շնորհեա․ ի յաջակողմեան քում դասիլ ։ Որ ունիս իշխանութիւն մահու եւ կենաց հանգո զհոգիս քո ծառայից․ ե․․․ ։ Յորժամ կարգես աթոռ տէրութեանդ քո և հաստատես ատեան դատաստանին․ յայնժամ խընայեա ի ծառայս քո․ ե․․․ ։ Ամենօրհնեալ աստուածամայր Մարիամ․ քերովբէական աթոռ արարչին մերոյ տընօրէնութեան․ զոր երանեն ամենայն ազինք հանապազ ։

ՄԱՂԹԱՆՔ

Հոգւոցն հանգուցելոց Քրիստոս Աստուած՝ արա հանգիստ և ողորմութիւն, և մեզ մեղաւորացս շնորհեա զթողութիւն յանցանաց ։

ՔԱՐՈԶ

Եւ ևս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք ։
Վասն հանգուցեալ հոգւոցն աղաչեսցուք զփրկիչն մեր

Digitized by Google

Քրիստոս, զի զնոսա ընդ արդարսն դասեսցէ, և զմեզ կեցուսցէ շնորհիւ ողորմութեան իւրոյ : Ամենակալ Տէր Աստուած մեր, կեցո և ողորմեա :

Տէր ողորմեա . Տէր ողորմեա . Տէր ողորմեա :

### ԱՂՕԹՔ

Քրիստոս Որդի Աստուծոյ անոխակալ և բարեգութ՝ գթա քո արարչական սիրովդ ի հոգիս հանգուցեալ ծառայից քոց : Յիշեա յաւուր մեծի գալստեան արքայութեան քո. արա արժանի ողորմութեան՝ քաւութեան և թողութեան մեղաց. դասաւորեալ պայծառացո ընդ սուրբս քո յաջակողմեան դասուն . զի դու ես Տէր և արարիչ ամենեցուն, դատաւոր կենդանեաց և մեռելոց : Եւ քեզ վայելէ փառք իշխանութիւն և պատիւ, այժմ և :

Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս . ամէն :

Հայր մեր որ յերկինս :

### ՄԱՂԹԱՆՔ

Զսաղմոսերգութիւնս և զաղաչանս ընկալցի մարդասէրն Աստուած. մեր մեղաց և յանցանացն թողութիւն շնորհեսցէ, ի չարեաց փրկեսցէ, ի մեղաց պահեսցէ. և նմա փառք յաւիտեանս. ամէն :

Եւ ապա սկսանին պատարագն :



# ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ՍԵՂԱՆՈՅ

## ՎԱՍՆ ՄԱՐՄՆԱՒՈՐ ԿԵՐԱԿՐՈՑ ԵՒ ԸՄՊԵԼԵԱՑ



Պատրաստեն սեղանն հացիւ և զարդարեն կերակրօք. և կանգնին [illegible] որ է [illegible]. և [illegible] իւր ժամանակին, և ասէ սաղմոս :

ԿՅ

Աչք ամենեցուն ի քեզ յուսան, և դու տաս կերակուր նոցա ի ժամու :

ԴՊԻՐՔՆ

Բարձր առնեմ զքեզ Աստուած իմ և Թագաւոր իմ, և օրհնեմ զանուն քո յաւիտեան և յաւիտեանս յաւիտենից :

Զօրհանապազ օրհնեցից զքեզ, և գովեցից զանուն քո յաւիտեան և յաւիտեանս յաւիտենից :

Մեծ է Տէր և օրհնեալ է յոյժ, և մեծութեան նորա ոչ գոյ չափ :

Ազգ և ազգ գովեսցեն զգործս քո, և զզօրութիւնս քո պատմեսցեն :

Զմեծվայելչութիւն փառաց սրբութեան քոյ խօսեսցին, և զսքանչելիս քո պատմեսցեն :

Զզօրութիւն ահի քոյ ասասցեն, և զմեծութիւնս քո պատմեսցեն :

Զյիշատակ բազում քաղցրութեան քո բղխեսցեն, և արդարութեամբ քով ցնծասցեն :

Գթած ողորմած է Տէր, երկայնամիտ և բազումողորմ :

Քաղցր է Տէր առ ամենեսեան, և գթութիւն նորա ի վերայ ամենայն արարածոց իւրոց :

Խոստովան եղիցին առ քեզ Տէր ամենայն գործք քո, և սուրբք քո օրհնեսցեն զքեզ :

Զփառս արքայութեան քոյ ասասցեն, և զզօրութիւնս քո պատմեսցեն :

Ճանաչել որդւոց մարդկան զզօրութիւնս քո, և զփառս մեծվայելչութեան արքայութեան քոյ :

Արքայութիւն քոյ արքայութիւն ամենայն յաւիտենից, և տէրութիւն քոյ ազգէ մինչև յազգ :

Digitized by Google

Հաւատարիմ է Տէր յամենայն բանս իւր, և արդար է յամենայն գործս իւր։

Հաստատէ Տէր զամենայն գայթակղեալս, և կանգնէ զամենայն գլորեալս։

Աչք ամենեցուն ի քեզ յուսան, և դու տաս կերակուր նոցա ի ժամու։

Բանաս զձեռն քո, և լցուցանես զամենեսեան քաղցրութեամբ կամաց քո։

Արդար է Տէր յամենայն ճանապարհս իւր, և սուրբ է յամենայն գործս իւր։

Մերձ է Տէր առ ամենեսեան որ կարդան առ նա, առ ամենեսեան որ կարդան առ նա ճշմարտութեամբ։

Զկամս երկիւղածաց իւրոց առնէ Տէր, աղօթից նոցա լսէ և կեցուցանէ զնոսա։

Պահէ Տէր զամենեսեան որք սիրեն զնա, և զամենայն մեղաւորս սատակէ Տէր։

Զօրհնութիւնս Տեառն խօսեսցի բերան իմ. օրհնեսցէ ամենայն մարմին զանուն սուրբ նորա յաւիտեան և յաւիտեանս յաւիտենից։

Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն։ Այժմ և միշտ։

ՔԱՀԱՆԱՅՆ

Ողորմած գթած է Տէր. կերակուր տայ երկիւղածաց իւրոց։

ՍԱՐԿԱՒԱԳՆ

Եւ ևս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք։

Աղաչեսցուք զամենակալն Աստուած, զի պարգևեսցէ մեզ կերակուր ուրախութեան, և լցուսցէ զսիրտս մեր ի լիութենէ արարածոց իւրոց։ Ամենակալ Տէր Աստուած մեր կեցո և ողորմեա։

ՔԱՀԱՆԱՅՆ

Օրհնեա Քրիստոս Աստուած մեր հոգևոր օրհնութեամբ զկերակուրս և զըմպելիս ծառայից քոց, և շնորհեա յառողջութիւն հոգւոյ և մարմնոյ։ Որպէս զի կրօնաւորական պարկեշտութեամբ վայելելով ի մարմնաւոր պիտոյիցս անանց բարեացդ և երկնից արքայութեանդ հաղորդս լիցուք ընդ ամենայն սուրբս քո։ Եւ գոհութեամբ փառաւորեսցուք զքեզ ընդ Հօր և ամենասուրբ Հոգւոյդ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

Հայր մեր որ յերկինս։

Digitized by Google

Եւ օրհնող սեղանոյն հոլով հանդերձ՝ և առեալ զնոյն թե-կնէ ընդ պատարագամատոյցն, որք առընթեր կան. կամ ընդ այնոցիկ որ գործակատարքն են ճաշոյն. և նոքա տան ամենեցուն, և ասէ ճաշակեցէք խաղաղութեամբ. և նորին է ճաշն ։

Իսկ եթէ վանականք իցեն կամ անապատաւորք, նոցա մինն ձեռնտուր է թարգմանութեան տեղւոջ, և առեալ ընթեռնուցու զերա-տարածայքն. և ամենեքեան ունկն դիցեն ընթերցմանն անդր-ադարձ ճաշակմամբ ։ Եւ եթէ ոք խնդրեսցէ ըմպելիս ինչ տա-րիւանդաց, լռեսցեն որք կարողն իցեն. և դարձեալ ճաշեսցեն ընթերցմն և ոչ աղաղակաւ ։

---

Եւ յետ յագենալոյ ի սեղանոյն դարձեալ կացցեն ի տեղիս իւրեանց ։

Եւ ասասցէ քահանայն ։

*Տէր Յիսուս լցաք ի բարութեանց քոց ։*

ԴՊԻՐՔՆ

*Տացուք գոհութիւն Տեառն Աստուծոյ մերոյ ։*
*Աջ Տեառն ի վերայ երկիւղածաց իւրոց, և ոյք յուսան յողորմութիւն Նորա ։*
*Փրկել ի մահուանէ զանձինս նոցա, և կերակրել զնոսա ի սովի ։*
*Անձինք մեր համբերեսցեն Տեառն, զի օգնական և պաշտպան մեր է ։*
*Ի նա ուրախ եղիցին սիրտք մեր, և յանուն սուրբ նորա յուսասցուք ։*
*Եղիցի ողորմութիւն քո Տէր ի վերայ մեր, որպէս յուսացաք ի քեզ ։*
*Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն ։ Այժմ և միշտ ։*

ՔԱՀԱՆԱՅՆ

*Կերակրիչ և ուրախարար Տէր, փառք քեզ. լցուցանող Քրիստոս գոհանամք զքէն ։*

ՍԱՐԿԱՒԱԳՆ

*Եւ ևս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք ։*
*Գոհացարուք ի վերայ լիութեանց պարգևաց Տեառն Աստուծոյ մերոյ, որ կերակրէ զմեզ օր ըստ օրէ առա-*

Digitized by Google

տապէս քաղցրութեամբ կամօք իւրովք ։ Զի հոգևոր բարութեան և երկնից արքայութեան հաղորդս արասցէ զծառայս իւր ըստ ակնկալութեան յուսոյն մերոյ ։ Ամենակալ Տէր Աստուած մեր, կեցո և ողորմեա ։

ԱՂՕԹՔ

Օրհնեալ ես Տէր Աստուած մեր, որ կերակրես զմեզ ի մանկութենէ և տաս կերակուր ամենայն մսեղեաց. լցո ուրախութեամբ և բերկրութեամբ զսիրտս մեր, որպէս զի զամենայն բաւականութիւն ունիցիմք, առաւելեալք ի գործս բարութեան ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր. որում վայելէ փառք իշխանութիւն և պատիւ, այժմ և միշտ և ։

Խաղաղութիւն ամենեցուն ։

Փառք քեզ Տէր, փառք քեզ Թագաւոր փառաց, որ ետուր մեզ կերակուր ուրախութեան, և լցուցեր զսիրտս մեր ի լիութենէ ամենաբաւական ողորմութեան քոյ. լցո և զմեզ Հոգւովդ քով սրբով, որպէս զի գտցուք առաջի քոյ հաճոյք, և մի ամաչեցեալք. զի դու ես և հատուցանես իւրաքանչիւր ըստ գործս իւր, և քեզ վայելէ փառք իշխանութիւն և պատիւ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն ։

Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս. ամէն ։
Հայր մեր որ յերկինս՝ սուրբ եղիցի անուն քո. եկես ։

Զկերողքս Աստուած օրհնեսցէ. սպասաւորացն և երախտաւորացն վարձս բարեաց պարգևեսցէ, և օրհնեսցէ զամենեսեան Քրիստոս Աստուած մեր որ զմեզ կերակրեաց և լիացոյց. նմա փառք յաւիտեանս. ամէն ։



Digitized by Google

# ԿԱՐԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ
# ՀԱՍԱՐԱԿԱՑ ԱՂՕԹԻՑ
## ԵՐԵԿՈՑԻ ԺԱՄՈՒՆ

### ՈՐ ԿԱՏԱՐԻ Ի ԴԷՄՍ ՈՐԴԻՈՑՆ ԱՍՏՈՒԾՈՑ

### ՈՐ ԷՋ Ի ԽԱՉԷՆ ԵՒ ՊԱՏԵԱԼ ՊԱՍՏԱՌԱԿԱԼԱՒ ԵԴԱՒ Ի ԳԵՐԵԶՄԱՆԻ



Ես առ Աստուած կարդացի, և Տէր լուաւ ինձ յերե-կոյս, ի վաղորդայն և ի հասարակ աւուր ։

Սպասէի Աստուծոյ իմոյ, և ակն ունէի կենարարին, որ փրկէ զծառայս իւր և կեցուցանէ ։

Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն ։ Այժմ և միշտ ։

Եւ ես խաղաղութեան զՏէր աղաչեսցուք, ընկալ կեցո ։

Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ ։

Խաղաղութիւն ամենեցուն ։

### ՍԱՂՄՈՍ ՁԵ

Խոնարհեցո Տէր զունկն քո և լուր ինձ , զի աղքատ և տնանկ եմ ես ։

Պահեա զանձն իմ սուրբ. Տէր, փրկեա զծառայս քո, Աստուած իմ, որ ի քեզ յուսացայ ։

Ողորմեա ինձ Տէր, զի առ քեզ աղաղակեցի զօրհա-նապազ, ուրախ արա զանձն ծառայի քոյ, զի առ քեզ Տէր համբարձի զանձն իմ ։

Զի դու Տէր քաղցր և ուղիղ ես , բազումողորմ առ ամենեսեան որ կարդան առ քեզ ։

Ունկն դիր Տէր աղօթից իմոց, և նայեա ի ձայն խըն-դրուածաց իմոց ։

Յաւուր նեղութեան իմոյ կարդացի առ քեզ, և լուար ինձ ։

Ոչ ոք է նման քեզ յաստուածս Տէր , և ոչ ոք է որ-պէս զգործս քո ։

Զամենայն ազգս զոր արարեր՝ եկեսցեն և երկիր պագցեն առաջի քո , փառաւոր արասցեն զանուն քո յաւիտեան ։



Digitized by Google

տապէս քաղցրութեամբ կամօք իւրովք ։ Զի հոգևոր բարութեան և երկնից արքայութեան հաղորդս արասցէ զծառայս իւր ըստ ակնկալութեան յուսոյն մերոյ ։ Ամենակալ Տէր Աստուած մեր, կեցո և ողորմեա ։

ԱՂՕԹՔ

Օրհնեալ ես Տէր Աստուած մեր, որ կերակրես զմեզ ի մանկութենէ և տաս կերակուր ամենայն մսեղեաց. լցո ուրախութեամբ և բերկրութեամբ զսիրտս մեր, որպէս զի զամենայն բաւականութիւն ունիցիմք, առաւելեալք ի գործս բարութեան ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր. որում վայելէ փառք իշխանութիւն և պատիւ, այժմ և միշտ և ։

Խաղաղութիւն ամենեցուն ։

Փառք քեզ Տէր, փառք քեզ Թագաւոր փառաց, որ ետուր մեզ կերակուր ուրախութեան, և լցուցեր զսիրտս մեր ի լիութենէ ամենաբաւական ողորմութեան քոյ. լցո և զմեզ Հոգւովդ քով սրբով, որպէս զի գտցուք առաջի քոյ հաճոյք, և մի՛ ամաչեցեալք. զի դու գաս և հատուցանես իւրաքանչիւր ըստ գործս իւր, և քեզ վայելէ փառք իշխանութիւն և պատիւ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն ։

Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս. ամէն ։
Հայր մեր որ յերկինս՝ սուրբ եղիցի անուն քո. եկես ։

Զկերողս Աստուած օրհնեսցէ. սպասաւորացն և երախտաւորացն վարձս բարեաց պարգևեսցէ, և օրհնեսցէ զամենեսեան Քրիստոս Աստուած մեր որ զմեզ կերակրեաց և լիացոյց. Նմա փառք յաւիտեանս. ամէն ։



## ԿԱՐԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ

# ՀԱՍԱՐԱԿԱՑ ԱՂՕԹԻՑ

### ԵՐԵԿՈՑԻ ԺԱՄՈՒՆ

ՈՐ ԿԱՏԱՐԻ Ի ԴԷՄՍ ՈՐԴԻՈՑՆ ԱՍՏՈՒԾՈՑ

ՈՐ ԷՋ Ի ԽԱՉԷՆ ԵՒ ՊԱՏԵԱԼ ՊԱՍՏԱՌԱԿԱԼԱՒ ԵԴԱՒ Ի ԳԵՐԵԶՄԱՆԻ



Ես առ Աստուած կարդացի, և Տէր լուաւ ինձ յերե֊կոյս, ի վաղորդայն և ի հասարակ աւուր։

Ապաւէի Աստուծոյ իմոյ, և ակն ունէի կենարարին, որ փրկէ զծառայս իւր և կեցուցանէ։

Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն։ Այժմ և միշտ։

Եւ ես խաղաղութեան զՏէր աղաչեսցուք, ընկալ կեցո։

Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ։

Խաղաղութիւն ամենեցուն։

ՍԱՂՄՈՍ ՁԵ

Խոնարհեցո Տէր զունկն քո և լուր ինձ, զի աղքատ և տնանկ եմ ես։

Պահեա զանձն իմ սուրբ. Տէր, փրկեա զծառայս քո, Աստուած իմ, որ ի քեզ յուսացայ։

Ողորմեա ինձ Տէր, զի առ քեզ աղաղակեցի զօրհա֊նապազ, ուրախ արա զանձն ծառայի քոյ, զի առ քեզ Տէր համբարձի զանձն իմ։

Զի դու Տէր քաղցր և ուղիղ ես, բազումողորմ առ ամենեսեան որ կարդան առ քեզ։

Ունկն դիր Տէր աղօթից իմոց, և նայեա ի ձայն խըն֊դրուածաց իմոց։

Յաւուր նեղութեան իմոյ կարդացի առ քեզ, և լուար ինձ։

Ոչ ոք է նման քեզ յաստուածս Տէր, և ոչ ոք է որ֊պէս զգործս քո։

Ամենայն ազգս զոր արարեր՝ եկեսցեն և երկիր պագցեն առաջի քո, փառաւոր արասցեն զանուն քո յաւիտեան։



Digitized by Google

Մեծ ես դու Տէր, և առնես սքանչելիս, և դու միայն ես Աստուած ։

Առաջնորդեա ինձ ի ճանապարհի քում, և գնացից ի ճշմարտութեան քում, և ուրախ եղիցի սիրտ իմ՝ երկնչել յանուանէ քումմէ ։

Խոստովան եղէց առ քեզ Տէր Աստուած իմ, բոլորով սրտիւ իմով, փառաւոր արարից զանուն քո յաւիտեան ։

Մեծ եղև ի վերայ իմ ողորմութիւն քո, և փրկեցեր զանձն իմ ի դժոխոց ներքնոց ։

Աստուած անօրէնք յարեան ի վերայ իմ, և ժողովք հզօրաց խնդրեցին զանձն իմ, և ոչ համարեցան զքեզ Աստուած առաջի իւրեանց ։

Այլ դու Տէր Աստուած իմ, գթած ես և ողորմած, երկայնամիտ, բազումողորմ և ճշմարիտ, նայեաց առ իս և ողորմեա ինձ ։

Տուր զօրութիւն ծառայի քոյ, կեցո զորդի աղախնոյ քոյ, և արա առ իս նշան բարութեան ։

Տեսցեն ատելիք իմ և ամաչեսցեն, զի դու Տէր օգնեցեր ինձ և մխիթարեցեր զիս ։

Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն ։ Այժմ և միշտ ։

## Մ Ա Ղ Թ Ա Ն Ք

Փառք քեզ Աստուած՝ փառք քեզ յաղագս ամենայնի, Տէր փառք քեզ ։

Եւ ևս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք, ընկալ ։

Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն ։

Խաղաղութիւն ամենեցուն ։

## Ս Ա Ղ Մ Ո Ս Ճ Լ Թ

Ապրեցո զիս Տէր ի մարդոյ չարէ, յառնէ անիրաւէ փրկեա զիս ։

Խորհեցան զանօրէնութիւն ի սիրտս իւրեանց, զօր ամենայն պատրաստեցան ի պատերազմ ։

Սրեցին զլեզուս իւրեանց որպէս զօձի, և թոյնք իժից ի ներքոյ շրթանց նոցա ։

Պահեա զիս Տէր ի ձեռաց մեղաւորի, և ի մարդոյ չարէ փրկեա զիս ։

Խորհեցան խափանել զգնացս իմ, թաքուցին ամբարտաւանք որոգայթ ինձ ։

Digitized by Google

Լարեա ձգեցին որոգայթ ոտից իմոց, շուրջ զշաւղօք իմովք եդին ինձ գայթակղութիւն։

Ասացի Տէր Աստուած իմ ես դու, ունկն դիր Տէր ձայնի աղօթից իմոց։

Տէր Տէր զօրութիւն փրկութեան իմոյ, հովանի գլխոյ իմոյ յաւուր պատերազմի։

Մի մատներ զիս Տէր ի ցանկութիւն մեղաւորաց՝ որք խորհեցան վասն իմ ընդ վայր հարկանել զիս։

Զի մի երբեք բարձրասցին, և խորհուրդք նոցա մի կատարեսցին. վախճան կատարածի նոցա վաստակ շրթանց իւրեանց ծածկեսցէ զնոսա։

Արկցես ի վերայ նոցա կայծակունս հրոյ, և կործանեսցես զնոսա. ի տառապանաց մի կարասցեն կեալ։

Մարդոյ լեզուանւոյ մի յաջողեսցի ի վերայ երկրի, զայր մեղաւոր չարիք իւր որսասցեն ի կորուստ։

Ծանեայ զի առնես Տէր դատաստան աղքատի և իրաւունս տնանկի։

Արդարք գոհասցին զանուանէ քումմէ, և բնակեսցեն ուղիղք առաջի երեսաց քոց։

Տէր կարդացի առ քեզ և լուր ինձ, նայեա ի ձայն աղօթից իմոց ի կարդալ իմում առ քեզ։

Ուղիղ եղիցին աղօթք իմ որպէս խունկ առաջի քո Տէր, համբարձումն ձեռաց իմոց պատարագ երեկոյի։

Դիր Տէր պահապան բերանոյ իմոյ, և դուռն ամուր շրթանց իմոց, զի մի խոտորեսցի սիրտ իմ բանիւ չարութեան։

Ի պատճառել զպատճառս մեղաց ընդ մարդս որ գործեն զանօրէնութիւն, և ոչ եղէց կցորդ ընտրելեաց նոցա։

Խրատեսցէ զիս արդարն ողորմութեամբ՝ և յանդիման արասցէ, իւղ մեղաւորի մի օծցէ զգլուխ իմ, այլ աղօթք իմ ի կամս նորա։

Արգելան մերձ առ վիմին դատաւորք նոցա. լուիցեն բանից իմոց և քաղցրասցին։

Որպէս թանձրութիւն հողոյ զի սփռեալ է ի վերայ երկրի՝ ցրուեսցին ոսկերք նոցա մերձ ի դժոխս։

Առ քեզ Տէր Տէր են աչք իմ, ի քեզ յուսացայ, մի հաներ զհոգի յինէն։

Պահեա զիս յորոգայթէ որ թագուցաւ ինձ, ի գայթակղութենէ գործողին զանօրէնութիւն։

Digitized by Google

Անկցին ի ցանցս նորա մեղաւորք, միայն եմ ես մին-չև անցից ։

Ձայնիւ իմով ես առ Տէր կարդացի, ձայնիւ իմով զՏէր աղաչեցի ։

Սփռեցից առաջի Տեառն զաղօթս իմ, և զնեղութիւնս իմ առաջի նորա պատմեցից ։

Ի նուաղել յինէն հոգւոյ իմոյ, դու Տէր ծանեար զշա-ւիղս իմ․ ի ճանապարհ յոր և գնայի՝ թագուցաւ ինձ որոգայթ ։

Հայէի յաջմէ տեսանէի, և ոչ ոք ճանաչէր զիս․ կո-րեաւ յինէն փախուստ իմ, և ոչ գտաւ խնդրող անձին իմոյ ։

Աղաղակեցի առ քեզ Տէր և ասացի, դու ես յոյս և բաժին իմ յերկրին կենդանեաց ։

Նայեա Տէր յաղօթս իմ, զի ես խոնարհ եղէ յոյժ․ ապրեցո զիս ի հալածչաց իմոց, զի հզօր եղեն քան զիս ։

Տէր հան ի բանտէ զանձն իմ, գոհանամ զանուանէ քումմէ ։

Եւ քեզ սպասեն արդարք, մինչև հատուցես ։

Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն ։ Այժմ և միշտ ։

ԾՐԳ

Ալէլուիա․ ալէլուիա ։

Լոյս զըւարթ սուրբ փառաց ա ։ ա ց․ ա նը-մահի Հօ ա ձօմր ե րկնաւորի․ սըրբոյ կենա-րարի ա ։ ա ։ ա ։ Յի սուսի Քրիստոսի ա ։ ա ։

Եկեալքս ի մըտանել արեգականըն տեսաք ըզլոյս երեկոյիս․ օրհնեմք ըզՀայր եւ զՈրդի եւ ըզսուրբ Հոգին Աստուածոյ ։ Եւ ամենքեան ասեմք ամէն ։

Արժանաւորեա ըզմեզ յամենայն ժամ օրհնել ձայ-նիւ երգով զանուն փառաց ամենասուրբ Երրորդու-թեանդ ։

Որ տաս զկենդանութիւն վասն որոյ եւ աշխարհս ըզքեզ փառաւորէ ա ա ա ։

Digitized by Google

## Մ Ա Ղ Թ Ա Ն Ք

Օրհնեալ Տէր՝ որ բնակեալդ ես ի բարձունս, և օրհնեալ են փառք մեծութեան քոյ. որ հաստատեցեր զլուսաւորս ի բարձունս, ի յերկնից լոյս ծագեցեր ընդ ամենայն տիեզերս, արարեր զարեգակն լուսատու տուընջեան, զլուսինն և զաստեղս լուսատու գիշերոյ, և զլոյս հրագի. դու ես լոյս գովելի, սուրբ և առաջին լոյսն. ի քէն փախնու խաւարն, և զլոյս քո կենդանի Տէր ՝ծագեա ի սիրտս մեր ։ Եւ մեք միաբան ասասցուք օրհնեալ է անուն սուրբ փառաց քոց ։ Եւ քեզ երգեմք զօրհնութիւն և զփառս Հօր և Որդւոյ և Հոգւոյդ սրբոյ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն ։

## Ք Ա Ր Ո Զ

Հասեալքս ի ժամ երեկոյիս ամենեքեան համբառնալով զձեռս մեր փառաւորեմք զքեզ Տէր Աստուած մեր, որ շնորհեցեր մեզ զտիւս խաղաղութեամբ անցուցանել, և հասանել ի ժամ երեկոյիս ։ Արժանաւորեա զմեզ Տէր սուրբ սրտիւ, հրեշտակային երգով զգոհաբանութիւն մատուցանել Տեառն Աստուծոյ ամենակալիդ. կեցո և ողոր ։

Ողորմեաց մեզ Տէր Աստուած մեր ըստ մեծի ողորմութեան քում. ասասցուք ամենեքեան միաբանութեամբ ։

Տէր ողորմեա. Տէր ողորմեա. Տէր ողորմեա ։

## Մ Ա Ղ Թ Ա Ն Ք

Հասեալքս ի ժամ երեկոյիս ամենեքեան անդադար փառաւորեմք զՀայր և զՈրդի և զսուրբ Հոգիդ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն ։

# ՄԵՍԵԴԻՔ

## ԾՆՆԴԵԱՆ ՔՐԻՍՏՈՍԻ ԵՒ ԱՒԵՏԵԱՑ ԵՒ ՎԵՐԱՓՈԽՄԱՆ ԵՒ ԱՅԼՈՑ ՏՕՆԻՑ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻՆ

### Ա

Տէր ասաց ցիս, Որդի իմ ես դու և ես այսօր ծնայ զքեզ ։
Ընդէ՞ր խռովեցան հեթանոսք՝ և ժողովուրդք խորհեցան ի սնոտիս ։

### Բ

Մեծացուսցէ անձն իմ զՏէր, և ցնծասցէ հոգի իմ Աստուծով փրկչաւ իմով ։

Digitized by Google

Զի հայեցաւ ի խոնարհութիւն աղախնոյ իւրոյ. ահա յայսմ հետէ երանեսցեն ինձ ամենայն ազգք ։

Գ

Իջցէ որպէս զանձրև ի վերայ գեղման, որպէս ցօղ զի ցօղէ յերկիր ։

Աստուած զիրաւունս քո արքայի տուր, և զարդարութիւնս քո որդւոյ թագաւորի ։

ՄԵՍԵԴԻՔ ՑԱՐՈՒԹԵԱՆ

ԱՁ

Տէր կարող և հզօր, Տէր կարող ի պատերազմի ։

Տեառն է երկիր լրիւ իւրով, աշխարհ և ամենայն բնակիչք նորա ։

ԱԿ

Աթոռ քո Աստուած, յաւիտեանս յաւիտենից, գաւազան ուղղութեան՝ գաւազան արքայութեան քո ։

Բղխեաց սիրտ իմ զբան բարի, և ասեմ զգործս իմ թագաւորի ։

ԲՁ

Տէր թագաւորեաց՝ ցնծասցէ երկիր, ուրախ եղիցին կղզիք բազումք ։

Երևեցան փայլատակունք նորա տիեզերաց, ետես և սասանեցաւ երկիր ։

ԲԿ

Երգեցէք Տեառն երգ նոր ամենայն երկիր, ծառայեցէք Տեառն ուրախութեամբ ։

Մտէք առաջի նորա ցնծութեամբ, ծաներուք զի նա է Տէր Աստուած մեր ։

ԳՁ

Եկայք և տեսէք զգործս Աստուծոյ, որ արար զնշանս և զարուեստս ի վերայ երկրի ։

Աստուած մեր ապաւէն և զօրութիւն, օգնական ի վերայ նեղութեանց որ գտին զմեզ յոյժ ։

ԳԿ

Աստուած մեր յերկինս և յերկրի, զամենայն զոր ինչ կամեցաւ և արար ։

Ցելանելն Իսրայելի յԵգիպտոսէ, տանն Յակովբայ ի ժողովրդենէն այլազգեաց ։

ԴՁ

Եղիցի ձեռն քո ի վերայ առն, աջ քո ի վերայ որդւոյ մարդոյ՝ զոր զօրացուցեր դնա ի քեզ ։

Digitized by Google

Որ հովուեսդ Իսրայելի՝ նայեաց որ առաջնորդես որպէս խաշին Յովսեփու ։

ԴԿ

Աստուած աստուծոց Տէր խօսեցաւ, կոչեաց զերկիր ։
Յելից արեգական մինչև ի մուտս . ի Սիովնէ վայելչութիւն գեղեցկութեան նորա ։

Մ Ե Ս Ե Դ Ի Ք Գ Ա Լ Ս Տ Ե Ա Ն

Օրհնեալ որ գաս յանուն Տեառն, օրհնեալ որ գալոց ես ։
Տէր Աստուած մեր երևեցաւ մեզ, արարէք տօնս ուրախութեան կանխաւ՝ մինչև յանկիւնս սեղանոյ ։

Ի Մ Ե Ծ Ի Հ Ի Ն Գ Շ Ա Բ Ա Թ Ի

Լուացայց սրբութեամբ զձեռս իմ, և շուրջ եղէց զսեղանով քո Տէր ։
Տէր, սիրեցի զվայելչութիւն տան քոյ, և զտեղի յարկի փառաց քոց ։

Ի Մ Ե Ծ Ի Ո Ւ Ր Բ Ա Թ Ո Ւ

Ետուն ի կերակուր ինձ լեղի, և ի ծարաւ իմ արբուցին ինձ քացախ ։
Եղիցին սեղանք նոցա առաջի նոցա յորոգայթ, ի հատուցումն և ի գայթակղութիւն ։

Ի Տ Օ Ն Ի Ս Ր Բ Ո Ց Խ Ա Չ Ի Ն

Ետուր երկիւղածաց քոց նշան, զի ապրեսցին յերեսաց աղեղան ։
Որպէս փրկեսցին սիրելիք քո, կեցո աջով քո և լուր մեզ ։

Ե Կ Ե Ղ Ե Ց Ի Ո Յ

Աստ օրհնեցէք ամենայն ծառայք Տեառն զՏէր ։
Ո կայք ի տան Տեառն և ի գաւիթս Աստուծոյ մերոյ ։

Կ Ի Ր Ա Կ Ա Մ Տ Ի

Սիրեցի՝ զի լուիցէ Տէր զձայն աղօթից իմոց ։
Զի խոնարհեցոյց զունկն իւր առ իս. և ես յաւուրս իմ կարդացի առ նա ։

Մ Ե Ս Ե Դ Ի Ք Մ Ա Ր Տ Ի Ր Ո Ս Ա Ց

ԱՁ

Եղիցի ողորմութիւն քո Տէր ի վերայ մեր, որպէս յուսացաք ի քեզ ։
Ցնծացէք արդարք ի Տէր, ուղղոց վայելէ օրհնութիւն ։

Digitized by Google

### ԱԿ

Տէր սիրէ զխրատունս, և ոչ ընդ վայր հարկանէ զսուրբս իւր ։

Փրկութիւն արդարոց ի Տեառնէ է, վերակացու է նոցա ի ժամանակս նեղութեան ։

### ԲՁ

Աքանչելի է Աստուած ի վերայ սրբոց իւրոց, Աստուած Իսրայելի ։

Տէր Աստուած օրհնեալ, օրհնեալ Տէր զօրհանապազ ։

### ԲԿ

Օգնութիւն ինձ ի Տեառնէ եկեսցէ, որ արար զերկինս և զերկիր ։

Համբարձի զաչս իմ ի լերինս, ուստի եկեսցէ ինձ օգնութիւն ։

### ԳՁ

Աստուած փառաւորեալ է ի խորհուրդս սրբոց իւրոց, մեծ և ահաւոր ի վերայ այնոցիկ, որ շուրջ են զնովաւ ։

Խոստովան եղիցին երկինք զքանչելեաց քոց Տէր, և ճշմարտութիւն քո յեկեղեցիս սրբոց ։

### ԳԿ

Սիրեցից զքեզ Տէր զօրութիւն իմ, Տէր հաստատիչ իմ, ապաւէն իմ և փրկիչ իմ ։

Աստուած օգնական իմ, և ես յուսամ ի նա. ապաւէն իմ, եղջիւր փրկութեան իմոյ ընդունելի իմ է ։

### ԴՁ

Մերձ է Տէր առ ամենեսեան որ կարդան առ նա. առ ամենեսեան որ կարդան առ նա ճշմարտութեամբ ։

Զկամս երկիւղածաց իւրոց առնէ Տէր, աղօթից նոցա լսէ և կեցուցանէ զնոսա ։

### ԴԿ

Արդարքն որպէս զարմաւենիս ծաղկեսցին, որպէս զմայրսն Լիբանանու բազումք եղիցին ։

Տնկեալք եղիցին ի տան Տեառն, և ի գաւիթս Աստուծոյ մերոյ ծաղկեսցին ։

### ՄԵՍԵԴԻՔ ԱՊԱՇԽԱՐՈՒԹԵԱՆ

### ԱՁ

Տէր լուիցէ ինձ ի կարդալ իմում առ նա ։

Ի կարդալ իմում լուար ինձ Աստուած ըստ արդարութեան իմոյ ։

## ԱԿ

Մի՛ ասասցէ թշնամին իմ թէ յաղթեցի նմա, կամ նեղիչք իմ ցնծասցեն թէ ես սասանեցայց։

Մինչև յե՞րբ դարձուցանես զերեսս քո յինէն, մինչև ցե՞րբ բարձրանայ թշնամին ի վերայ իմ. Նայեա և լուր ինձ Տէր Աստուած իմ։

## ԲՁ

Բերան արդարոյ պատմէ զիմաստութիւն, և լեզուն նորա խօսեսցի զիրաւունս։

Մի՛ նախանձիր ընդ չարս, և մի՛ ընդ այնոսիկ՝ որ գործեն զանօրէնութիւն։

## ԲԿ

Քաղցրութիւն արարեր ընդ ծառայի քում Տէր, ըստ բանի քում։

Քաղցր ես դու Տէր, և քաղցրութեամբ քով խրատեա զիս։

## ԳՁ

Նայեա և լուր ինձ Տէր Աստուած իմ։

Մինչև յե՞րբ Տէր մոռանաս զիս ի սպառ, մինչև յե՞րբ դարձուցանես զերեսս քո յինէն։

## ԳԿ

Գթութիւնք քո բազում են Տէր, և ըստ իրաւանց քոց կեցո զիս։

Տես զխոնարհութիւն իմ և փրկեա զիս, զի զօրէնս քո ես ոչ մոռացայ։

## ԴՁ

Աստուած յօգնել ինձ նայեա, և Տէր յընկերել ինձ փութա։

Ամաչեսցեն և յամօթ լիցին որ խնդրէին զանձն իմ։

## ԴԿ

Լուր Աստուած աղօթից իմոց յաղաչել ինձ առ քեզ, յերկիւղէ թշնամւոյն փրկեա զանձն իմ։

Ծածկեսցես զիս ի ժողովոց չարաց, ի բազմութենէ ոյք գործեն զանօրէնութիւն։

### ԿԱՐԳ ՈՒՂԻՂԵՂԻՑԵԱՑ

Ուղիղ եղիցին աղօթք իմ, Որպէս խունկ առաջի քո Տէր։
Համբարձումն ձեռաց իմոց, Պատարագ երեկոյի։

Digitized by Google

Յարուկ աւաղականին ։

Ուղիղ եղիցին աղօթք իմ, որպէս խունկ առաջի քո Տէր ։ Համբարձումն ձեռաց իմոց՝ պատարագ երեկոյի ։

Տէր աղաղակեցի առ քեզ լուր ինձ ։ Նայեաց ի ձայն խնդրուածաց իմոց յաղաղակել իմում առ քեզ ։

Ի ՄԵԾԻ ՀԻՆԳՇԱԲԱԹՈՒ

Ուղիղ եղիցին աղօթք իմ. Որպէս խունկ առաջի քոյ Տէր։ Զերեկոյի աղօթս մեր ընկալ Տէր. Եւ զտարածումն ձեռաց մերոց ։

Ի ՄԵԾԻ ՈՒՐԲԱԹՈՒ

Ուղիղ եղիցին աղաչանք մեր. Որպէս խունկ առաջի քոյ Տէր ։ Համբարձումն ձեռաց մերոց . Պատարագ երեկոյի ։

ՔԱՐՈԶ ԿԻՐԱԿԱՄՏԻՑ ԵՒ ԱՄԵՆԱՅՆ ԱՒՈՒՐՑ ՏԷՐՈՒՆԵԱՑ

Աստացուք ամենեքեան միաբանութեամբ Տէր ողոր։ 148։

ՔԱՐՈԶ Ի ՏՕՆԻ ՍՐԲՈՑ ԵՒ ՊԱՀՈՑ

Եւ ևս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք ։

Աղաչեսցուք զամենակալն Աստուած՝ զՀայր Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, զթագաւորն խաղաղութեան յաղագս խաղաղութեան և վասն միայնոյ, սուրբ, կաթուղիկէ և առաքելական եկեղեցւոյ . զի զբազում ամս խաղաղութեամբ տացէ մեզ Տէր Աստուած մեր , և զթագաւորս խաղաղարարս առաքեսցէ առ մեզ վասն մեծի՝ սուրբ և աճաւոր անուան իւրոյ. զպետս գաւառաց, զզօրավարս, զզօրագլուխս, զժողովուրդս , զմուտս և զելս մեր խաղաղութեամբ պահեսցէ, և զամենայն պատերազմունս թշնամւոյն խորտակեսցէ ի մէնջ. Տէրն ամենակալ կեցուսցէ և ողորմեսցի ։

Զերեկս մերձեալ , և զառաջակայ գիշերս խաղաղութեամբ անցուցանել հաւատով ի Տեառնէ խնդրեսցուք ։

Զհրեշտակ խաղաղ ։ Զքաւութիւն ։ Զսրբոյ խաչին ։

Եւ ևս միաբան ։ Զանձինս մեր ։ Ողորմեաց մեզ ։

ԱՂՕԹՔ

Լուր ձայնից մերոց Տէր Աստուած մեր, ընկալ զաղաչանս մեր, զհամբարձումն ձեռաց մերոց և զբանս ա-

զօթից՝ սրբելով զերեկոյի պատարագս մեր ի հոտ անուշից՝ ի հաճոյս քեզ պատրաստել: Ցաւել ի մեզ Տէր ամենակալ զհաւատ, զյոյս, զսէր և զամենայն գործս առաքինութեան. որպէս զի ըստ կամաց քոց բարեսիրաց միշտ կրօնաւորեալք բարեպաշտութեամբ ի տուէ և ի գիշերի, և արժանաւորք եղիցուք յաղագս անձանց մերոց փրկութեան և վասն հոգևոր կենացդ աղաչել զքեզ Տէր, և գտանել ի քէն զշնորհս և զողորմութիւն. և գոհանալով փառաւորեսցուք զՀայր և զՈրդի և զսուրբ Հոգիդ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

Խաղաղութիւն ամենեցուն:

Քեզ երկիր պագանելով Տէր Աստուած մեր՝ գոհանամք զքէն յաղագս խաղաղութեամբ անցուցանելոյ ի մէնջ զերկարութիւն տուընջեանս: Տուր մեզ, Տէր, աղաչեմք զքեզ զերեկս և զառաջիկայ գիշերս առանց մեղաց և առանց գայթակղութեան անցուցանել, հաստատուն կալ և մնալ ի հաւատ, ի յոյս, ի սէր և ի պատուիրանապահութեան քոյ: Խնդրելով զխաղաղութիւն ամենայն աշխարհի, եկեղեցւոյ քում սրբոյ զհաստատութիւն, և անձանց մերոց զփրկութիւն: Որպէս զի ընդունելով ի քէն զհայցուածս մեր, և զմեծվայելչական փառաբանութիւն միշտ ի բարձունս առաքեսցուք ամենազօր տէրութեանդ Քրիստոս Աստուած մեր, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

Եւ ապա ասէ

ԱՁ. Սուրբ Աստուած: սուրբ եւ հզ-
օր: սուրբ եւ անմահ: ողորմեա: ա-
ծ մեզ: Երիցս կրկնեա և զկնի Թովմայի ասացելոյ ասասցէ:

Փառաւորեալ և օրհնեալ միշտ սուրբ կոյս Աստուածածին Մարիամ մայր Քրիստոսի մատո զաղաչանս մեր: Որդւոյ քո եւ Աստուծոյ մերոյ:

ՄԱՂԹԱՆՔ

Փրկել զմեզ ի փորձութենէ և յամենայն վտանգից մերոց:

ՔԱՐՈԶ

Եւ ևս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք ։

Վասն լսելի լինելոյ Տեառն Աստուծոյ ձայնի աղաչանաց մերոց՝ բարեխօսութեամբ սուրբ Աստուածածնին, և խնամելոյ ի վերայ մեր ողորմութեան և գթութեան Տեառն Աստուծոյ ։ Ամենակալ Տէր Աստուած մեր, կեցո և ողորմեա ։

Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ, այժմ և միշտ ։

Խաղաղութիւն ամենեցուն ։

ՍԱՂՄՈՍ ՃԻ

Համբարձի զաչս իմ ի լերինս, ուստի եկեսցէ ինձ օգնութիւն ։

Օգնութիւն ինձ ի Տեառնէ եկեսցէ, որ արար զերկինս և զերկիր ։

Մի՛ տար ի սասանութիւն զոտն քո, և մի՛ ննջեսցէ պահապան քո ։

Որպէս ոչ ննջէ և ոչ ի քուն երթայ պահապանն Իսրայելի ։

Տէր պահեսցէ զքեզ, և Տէր ընկալցի աջոյ ձեռամբն իւրով ։

Արեգակն ի տուէ քեզ մի՛ մեղիցէ, և մի՛ լուսինն ի գիշերի ։

Տէր պահեսցէ զքեզ յամենայն չարէ, պահեսցէ Տէր զանձն քո ։

Տէր պահեսցէ զմուտ և զել քո՝ յայսմ հետէ մինչև յաւիտեան ։

Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն ։ Այժմ և միշտ ։

Ասի համբարձի շարական ըստ պատշաճի ։

ՔԱՐՈԶ

Վասն խաղաղութեան ամենայն աշխարհի, և հաստատութեան սրբոյ եկեղեցւոյ զՏէր աղաչեսցուք ։ Ասասցուք ամենեքեան միաբանութեամբ ։

Տէր ողորմեա. Տէր ողորմեա. Տէր ողորմեա ։

ԱՂՕԹՔ

Հայր գթած՝ բարերարնամող՝ արարիչ ամենայն արարածոց, ընկալ զպաղատանս ծառայից քոց ի ժամ երե-

կայիս, որ առատդ ես առ ամենեսեան պարգևօք բարերարութեան քո: Ողորմեա Տէր ամենայն աշխարհի և եկեղեցւոյ քում սրբոյ, հիւանդաց, վշտացելոց, ճանապարհորդաց, Նաւորդաց, խոստովանողաց, ապաշխարողաց և հոգւոցն հանգուցելոց. զի դու Տէր ամենակալ գիտես զպէտս մեր և զկարիս առաւել քան զոր խնդրեմք և իմանամք: Եւ քեզ ընդ Որդւոյ և ամենասուրբ Հոգւոյդ վայելէ փառք իշխանութիւն և պատիւ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

Յաւուրս աղուհացից ասա Տէր ամենակալն, և Խորհուրդն և Ողորմեա. 163: Եւ յետ Նորա Որ բնակեալ: Իսկ յայլ աւուրս պահոց և ի տօնս սրբոց ասա միայն Որ բնակեալ. և ի Կիրակամուտս Աստ օրհնեցէք: 223:

ԱՐՁԱԿՄԱՆ ՓՈԽ

Որ բնակեալ է յօգնութիւն Բարձրելոյն, ընդ հովանեաւ Աստուծոյ յերկինս հանգիցէ:

Ասացէ Տեառն, ընդունելի իմ ես, ապաւէն իմ Աստուած, և ես յուսամ ի Նա:

Նա փրկեսցէ զիս յորոգայթէ որսողին, և ի բանից խռովութենէ:

Ի Թիկնամէջս իւր ընկալցի զքեզ, ի հովանի Թևոց նորա յուսասցիս:

Որպէս զէն՝ շուրջ եղիցի զքև ճշմարտութիւն Նորա:

Ոչ երկիցես դու յերկիւղէ գիշերի, և ոչ ի Նետէ որ Թռչի ի տուէ:

Ցիրէ որ շրջի ի խաւարի, ի գայթակղութենէ դիւին ի հասարակ աւուր:

Անկցին ի կողմանէ քումմէ հազարք և բիւրք ընդ աջմէ քումմէ, որ առ քեզ ինչ ոչ մերձեսցին:

Բայց միայն աչօք քովք հայեսցիս դու, և զհատուցումն մեղաւորաց տեսցես. զի դու Տէր յոյս իմ ես:

ԶԲարձրեալն արարեր քեզ ապաւէն. ոչ հասցեն առ քեզ չարք, և տանջանք մի՛ մերձեսցին ի յարկս քո:

Հրեշտակաց իւրոց պատուիրեալ է վասն քո, պահել զքեզ յամենայն ճանապարհս քո:

Ի բազուկս իւրեանց ընկալցին զքեզ, զի մի՛ երբեք հարցես զքարի զոտն քո:

Ի վերայ իժից և քարբից գնասցես դու, առ ոտն կոխեսցես զառիւծն և զվիշապն:

Քանզի յիս յուսացաւ և փրկեցից զնա, հովանի եղէց նմա, զի ծանեաւ զանուն իմ։

Կարդասցէ առ իս՝ և ես լուայց նմա, և առ նմա եղէց ի նեղութեան։

Փրկեցից և փառաւոր արարից զնա, երկայնաւուրբք լցուցից և ցուցից նմա զփրկութիւն իմ։

Առ քեզ Տէր համբարձի զաչս իմ, որ բնակեալդ ես ի յերկինս։

Որպէս աչք ծառայի ի ձեռն Տեառն իւրոյ, և որպէս աչք աղախնոյ ի ձեռն տիկնոջ իւրոյ։

Այնպէս են աչք մեր առ քեզ Տէր Աստուած մեր, մինչև ողորմեսցիս ի վերայ մեր։

Ողորմեաց մեզ Տէր, ողորմեաց մեզ, զի բազում լցաք արհամարհանօք։

Եւս առաւել լցան անձինք մեր նախատանօք՝ որ նախատէին զմեզ, և արհամարհանօք ամբարտաւանից։

Աստուած յանուան քում կեցո զիս, և ի զօրութեան քում իրաւ արա ինձ։

Աստուած լուր աղօթից իմոց, ունկն դիր բանից բերանոյ իմոյ։

Օտարք յարեան ի վերայ իմ, և հզօրք խնդրեցին զանձն իմ, և ոչ համարեցան զքեզ Աստուած առաջի իւրեանց։

Ահա Աստուած օգնական իմ, և Տէր ընդունելի հոգւոյ իմոյ։

Ի դարձուցանել զչարն ի թշնամիս իմ, ճշմարտութեամբ քով սատակեա զնոսա։

Ես կամօք իմովք պատարագս մատուցից քեզ, և խոստովան եղէց անուան քում Տէր, զի բարի է։

Յամենայն նեղութենէ իմմէ փրկեցեր զիս, և ի թշնամիս իմ ետես ակն իմ։

Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն։ Այժմ և միշտ։

### Մ Ա Ղ Թ Ա Ն Ք

Զբարձրեալն զՔրիստոս արասցուք մեզ ապաւէն, զի ոչ հասցեն առ մեզ չարք, և տանջանք մի՛ մերձեսցին ի յարկս մեր։

### Ք Ա Ր Ո Զ

Եւ մեք միաբան զողորմութիւն ի Տեառնէ խնդրելով ասասցուք ամենեքեան միաբանութեամբ։

Տէր ողորմեա. Տէր ողորմեա. Տէր ողորմեա։

Digitized by Google

## ԱՂՕԹՔ

Ցոյս կենաց, ընդունող աղօթից, քաւիչ մեղաց և կատարիչ խնդրուածաց Քրիստոս Աստուած մեր, ընկալ զպաղատանս մեր ի ժամ երեկոյիս բարեխօսութեամբ սուրբ Աստուածածնին և աղաչանօք ամենայն սրբոց քոց։ Լուր մեզ Տէր և ողորմեա, ներեա, քաւեա և թող զմեղս մեր, արժանաւորեա գոհութեամբ փառաւորել զքեզ ընդ Հօր և ընդ սուրբ Հոգւոյդ, այժմ և միշտ։

Ցիշեա Տէր զպաշտօնեայս քո, զծնողսն մեր։ 175։

Բարերար և բազումողորմ Աստուած, քո անմոռաց։

Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս. ամէն։

Հայր մեր որ յերկինս՝ սուրբ եղիցի անուն քո. եկես։

## ՓՈԽ ԿԻՐԱԿԱՄՏԻՑ

Աստ օրհնեցէք ամենայն ծառայք Տեառն զՏէր, ո կայք ի տուն Տեառն և ի գաւիթս Աստուծոյ մերոյ։

Ի գիշերի համբարձէք զձեռս ձեր ի սրբութիւն, և օրհնեցէք զՏէր։

Օրհնեսցէ զմեզ Տէր ի Սիոնէ, որ արար զերկինս և զերկիր։

Խոստովան եղէց քեզ Տէր բոլորով սրտիւ իմով, առաջի հրեշտակաց սաղմոս ասացից քեզ։

Զի լուար զբանս բերանոյ իմոյ, երկիր պագից ի տաճար սուրբ քո, և խոստովան եղէց անուան քում վասն ողորմութեան և ճշմարտութեան քոյ։

Մեծ արարեր յամենայնի զանուն սուրբ քո. յորում աւուր կարդամ առ քեզ վաղվաղակի լուր ինձ, և բազում արասցես զօրութիւնս յանձն իմ։

Խոստովան եղիցին առ քեզ ամենայն թագաւորք երկրի, զի լուան զբանս բերանոյ քոյ, և օրհնեսցեն զճանապարհս քո։

Մեծ են փառք Տեառն, բարձր է Տէր՝ զխոնարհս տեսանէ, և զբարձունս ի հեռաստանէ ճանաչէ։

Թէպէտ և գնացից ես ի մէջ նեղութեանց, կեցուցես զիս ի բարկութենէ թշնամւոյն։

Ձգեցեր զձեռն քո և փրկեաց զիս աջ քո, և Տէր հատուսցէ ընդ իմ։

Տէր ողորմութիւն քո յաւիտեան, զգործս ձեռաց քոց մի՛ անտես առներ։

Աստուած յանուան քում կեցո զիս, և ի զօրութեան քում իրաւ արա ինձ։

Աստուած լուր աղօթից իմոց, ունկն դիր բանից բերանոյ իմոյ։

Օտարք յարեան ի վերայ իմ, և հզօրք խնդրեցին զանձն իմ, և ոչ համարեցան զքեզ Աստուած առաջի իւրեանց։

Ահա Աստուած օգնական իմ, և Տէր ընդունելի հոգւոյ իմոյ։

Ի դարձուցանել զչարն ի թշնամիս իմ, ճշմարտութեամբ քով սատակեա զնոսա։

Ես կամօք իմովք պատարագս մատուցից քեզ, և խոստովան եղէց անուան քում Տէր, զի բարի է։

Յամենայն նեղութենէ իմմէ փրկեցեր զիս, և ի թշնամիս իմ ետես ակն իմ։

Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն։ Այժմ և միշտ։

ՔԱՐՈԶ

Խնդրեսցուք հաւատով միաբանութեամբ ի Տեառնէ, զի զողորմութեան զշնորհս իւր արասցէ ի վերայ մեր Տէրն ամենակալ, կեցուսցէ և ողորմեսցի։

Կեցո Տէր։ Տէր ողորմեա։ Երէցս։

ԱՂՕԹՔ

Թագաւոր խաղաղութեան օգնական և փրկիչ անձանց մերոց Քրիստոս Աստուած մեր, պարսպեալ պահեա զժողովուրդս քո ընդ հովանեաւ սուրբ և պատուական խաչիդ քո ի խաղաղութեան։ Փրկեա յերևելի և յաներևոյթ թշնամւոյն. արժանաւորեա գոհութեամբ փառաւորել զքեզ ընդ Հօր և ընդ սուրբ Հոգւոյդ, այժմ և միշտ և։

ՔԱՐՈԶ ԽԱՉԻ

Սուրբ խաչիւս աղաչեսցուք զՏէր, զի սովաւ փրկեսցէ զմեզ ի մեղաց, և կեցուսցէ շնորհիւ ողորմութեան իւրոյ։ Ամենակալ Տէր Աստուած մեր, կեցո և ողորմեա։

ԱՂՕԹՔ

Պահպանեա զմեզ Քրիստոս Աստուած մեր ընդ հովանեաւ սուրբ և պատուական խաչիդ քով ի խաղա-

Digitized by Google

զութեան. փրկեա յերեւելի և յաներեւոյթ թշնամւոյն։ Արժանաւորեա գոհութեամբ փառաւորել զքեզ ընդ Հօր և ընդ սրբոյ Հոգւոյդ, այժմ և միշտ և յաւիտեանս։

ՔԱՐՈԶ ԵԿԵՂԵՑՒՈՅ

Սուրբ եկեղեցեաւս աղաչեսցուք զՏէր, զի սովաւ փըր-կեսցէ զմեզ ի մեղաց և կեցուսցէ շնորհիւ ողորմութեան իւրոյ։ Ամենակալ Տէր Աստուած մեր, կեցո և ողորմեա։

ԱՂՕԹՔ

Առ դրան սուրբ եկեղեցւոյս և առաջի աստուածընկալ և պայծառացեալ սուրբ Նշանացս խոնարհեալ երկիւղիւ երկիր պագանեմք. զսուրբ, զհրաշալի և զյաղթող զտէ-րութիւնդ քո օրհնեմք և փառաւորեմք, և քեզ մատու-ցանեմք զօրհնութիւն և զփառս Հօր և Որդւոյ և Հոգւոյդ սրբոյ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

ԱՂՕԹՔ

Ի մէջ տաճարիս, և առաջի աստուածընկալ և պայ-ծառացեալ սուրբ Նշանացս և սուրբ սեղանոյս խոնար-հեալ երկիւղիւ երկիր պագանեմք. զսուրբ, զհրաշալի և զյաղթող զտէրութիւնդ քո փառաւորեմք, և քեզ մա-տուցանեմք զօրհնութիւն և զփառս ընդ Հօր և ընդ Հոգ-ւոյդ սրբոյ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտեն։

Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս. ամէն։
Հայր մեր որ յերկինս։





Digitized by Google

## ԿԱՐԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ

# ՀԱՍԱՐԱԿԱՑ ԱՂՕԹԻՑ

## ԽԱՂԱՂԱԿԱՆ ԺԱՄՈՒՆ

ՈՐ ԿԱՏԱՐԻ Ի ԴԷՄՍ ՀՈԳՒՈՑՆ ԱՍՏՈՒԾՈՅ, ԱՅԼ ԵՒ
Ի ԴԷՄՍ ԲԱՆԻՆ ԱՍՏՈՒԾՈՅ ՈՐ ԵԴԱՒ Ի ԳԵՐԵԶՄԱՆԻ
ԵՒ ԷՋ Ի ԴԺՈԽՍ ԵՒ ԽԱՂԱՂՈՒԹԻՒՆ ԱՐԱՐ ՀՈԳՒՈՑՆ



Օրհնեցից զՏէր յամենայն ժամ, յամենայն ժամ օրհնութիւն նորա ի բերան իմ ։
Ի Տէր պարծեսցի անձն իմ, լուիցեն հեզք և ուրախ եղիցին ։
Մեծ արարէք զՏէր ինև, և բարձր արասցուք զանուն նորա ի միասին ։
Խնդրեցի ի Տեառնէ և լուաւ ինձ, յամենայն նեղութենէ իմմէ փրկեաց զիս ։
Մատիք առ Տէր և առէք զլոյս, և երեսք ձեր մի՛ ամաչեսցեն ։
Այս աղքատ կարդաց առ Տէր, և Տէր լուաւ սմա, յամենայն նեղութենէ սորա փրկեաց զսա ։
Բանակք հրեշտակաց Տեառն շուրջ են զերկիւղածովք իւրովք, և պահեն զնոսա ։
Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն ։ Այժմ և միշտ ։
Եւ ես խաղաղութեան զՏէր աղաչեսցուք ։
Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ ։

Երգ աստիճանաց ։

Ի նեղութեան իմում ես առ Տէր կարդացի և լուաւ ինձ. Տէր փրկեաց զանձն իմ ի շրթանց նենգաւորաց և ի լեզուէ չարէ ։

Չկանանն բովանդակ ասա ։ Բայց ամենայն ակեղա շարէն, զի Երգ աստիճանաց է ։

### ՍԱՂՄՈՍ ՁԷ

Տէր Աստուած փրկութեան իմոյ, ի տուէ կարդացի և գիշերի առաջի քոյ։

Մտցեն աղօթք իմ առաջի քոյ Տէր, խոնարհեսցի ունկն քո ի խնդրուածս իմ։

Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն։ Այժմ և միշտ։

Եւ ևս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք։

Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ։

Խաղաղութիւն ամենեցուն։

### ՍԱՂՄՈՍ Դ

Ի կարդալ իմում լուար ինձ Աստուած, ըստ արդարութեան ինեղութեան ինձ անդորր արարեր. ողորմեա ինձ և լուր աղօթից իմոց։

Որդիք մարդկան, մինչև յե՞րբ էք խստասիրտք. ընդէ՞ր սիրէք զնանրութիւն, և խնդրէք զստութիւն։

Ծաներուք զի սքանչելիս արար Տէր սրբոյ իւրում. և Տէր լուիցէ ինձ ի կարդալ իմում առ նա։

Բարկանայք՝ և մի՛ մեղանչէք. զոր ինչ ասէք ի սիրտս ձեր՝ յանկողինս ձեր զղջացարուք։

Մատուցէք պատարագս արդարութեան, և յուսացարուք ի Տէր։

Բազումք ասէին թէ ո՞ ցուցցէ մեզ զբարութիւն Տեառն. նշանեցաւ առ մեզ լոյս երեսաց քոց, և ետուր ուրախութիւն սրտից մերոց։

Ի պտղոյ ցորենոյ գինւոյ ձիթոյ իւրեանց լցուցեր զնոսա։

Խաղաղութեամբ յայս և ի սոյն ննջեսցուք և զարթիցուք. զի դու Տէր միայն առանձին յուսով քով բնակեցուցեր զմեզ։

Տէր մի՛ սրտմտութեամբ քով յանդիմաներ զիս, և մի՛ բարկութեամբ քով խրատեր զիս։

Ողորմեա ինձ Տէր զի հիւանդ եմ ես, բժշկեա զանձըն իմ զի խռովեցան ոսկերք իմ։

Անձն իմ յոյժ խռովեցաւ, և դու Տէր մինչև յե՞րբ։

Դարձ Տէր և փրկեա զանձն իմ, կեցո զիս Տէր ըստ ողորմութեան քում։

Զի ոչ ոք է որ ի մահու յիշէ զքեզ, կամ ի դժոխս խոստովան առնիցի առ քեզ։

Digitized by Google

Վաստակեցայ ես ի հեծութեան իմում, լուացի զամենայն գիշեր զմահիճս իմ, և արտասուօք իմովք զանկողինս իմ թացի ։

Խռովեցաւ ի սրտմտութենէ ակն իմ, և մաշեցայ ես ի վերայ ամենայն թշնամեաց իմոց ։

Ի բաց կացէք յինէն ամենեքեան, որք գործէք զանօրէնութիւն ։

Լուաւ Տէր ձայնի լալոյ իմոյ, լուաւ Տէր աղօթից իմոց, և Տէր զխնդրուածս իմ ընկալաւ ։

Ամաչեսցեն և խռովեսցին յոյժ ամենայն թշնամիք իմ, դարձցին յետս և ամաչեսցեն յոյժ վաղվաղակի և խռովեսցին ։

Մինչև յե՞րբ Տէր մոռանաս զիս ի սպառ, մինչև յե՞րբ դարձուցանես զերեսս քո յինէն ։

Մինչև յե՞րբ դնեմ զխորհուրդս յանձն իմ, և ցաւք սրտի իմոյ զաւուրս ։

Մինչև ցե՞րբ բարձրանայ թշնամին ի վերայ իմ, նայեա և լուր ինձ Տէր Աստուած իմ ։

Լոյս տուր Տէր աչաց իմոց, զի մի՛ երբեք ննջեցից ի մահ ։

Մի՛ ասասցէ թշնամին թէ յաղթեցի նմա, կամ նեղիչք իմ ցնծասցեն, թէ ես սասանեցայց ։

Ես յողորմութիւնս քո Տէր յուսացայ, և ցնծացաւ սիրտ իմ ի փրկութեան քում. օրհնեցից զՏէր զբարերարդ իմ ։

Պահեա զիս Աստուած իմ, զի ես ի քեզ յուսացայ. ասացի Տեառն, Տէր իմ ես դու, և բարիք իմ ինձ ի քէն են ։

Սրբոց քոց որ են յերկրի քում, սքանչելի արարեր զամենայն կամս իմ ի նոսա ։

Յաճախեսցին հիւանդութիւնք նոցա. յետ այսորիկ ապա վաղվաղեսցին ։

Ոչ ժողովեցայց ի ժողովս նոցա արեանց, և ոչ յիշեցից զանուանս նոցա ի շրթունս իմ ։

Տէր բաժին ժառանգութեան իմոյ և բաժակի իմոյ, դու ես որ այսրէն դարձուցանես զժառանգութիւն իմ յիս ։

Վիճակք ելին ինձ ընդ ընտիրս, և ժառանգութիւն իմ հաճոյ եղև ինձ ։

Օրհնեցից զՏէր որ իմաստուն արար զիս. մինչ ի գիշերի ևս խրատեցին զիս երիկամունք իմ ։

Digitized by Google

Ցառաջագոյն տեսանէի զՏէր առաջի իմ յամենայն ժամ, զի է ընդ աջմէ իմմէ զի մի՛ սասանեցայց ։

Վասն այսորիկ ուրախ եղև սիրտ իմ, և ցնծացաւ լեզու իմ, ևս և մարմին իմ բնակեսցէ յուսով ։

Զի ոչ թողցես զանձն իմ ի դժոխս, և ոչ տացես սրբոյ քում տեսանել զապականութիւն ։

Ցուցեր ինձ զճանապարհս կենաց, լցուցեր զիս ուրախութեամբ երեսաց քոց, ի քաղցրութենէ վայելչութեան աջոյ քոյ մինչ ի սպառ ։

Լուր Տէր արդարութեան, և նայեա ի խնդրուածս իմ. ունկն դիր աղօթից իմոց, զի ոչ շրթամբք նենգաւորօք ։

Յերեսաց քոց իրաւունք ինձ ելցեն, և աչք իմ տեսցեն զուղղութիւն ։

Փորձեցեր զսիրտ իմ և քննեցեր ի գիշերի, փորձեցեր զիս՝ և ոչ գտաւ յիս անիրաւութիւն ։

Մի՛ խօսեսցի բերան իմ զգործս որդւոց մարդկան. վասն բանից շրթանց քոց ես պահեցից զճանապարհս խիստս ։

Հաստատեա զշաւիղս իմ ի ճանապարհի քում, զի մի՛ գայթակղեսցին գնացք իմ ։

Ես առ քեզ Տէր կարդացի՝ զի լուար ինձ Աստուած. խոնարհեցո առ իս զունկն քո, և լուր բանից իմոց ։

Սքանչելի արարեր զողորմութիւնս քո, ո փրկես զայնոսիկ որք յուսացեալ են ի քեզ՝ յայնցանէ որք հակառակ կան աջոյ քո ։

Պահեա զիս որպէս բիբական, ընդ հովանեաւ թևոց քոց ծածկեսցես զիս յերեսաց ամպարշտաց, որք տառապեցուցին զիս ։

Թշնամիք զանձն իմ պաշարեցին, ի ճարպս իւրեանց արգելան, և բերանք նոցա խօսեցան զամբարտաւանութիւն ։

Մերժեցին զիս և այժմ դարձեալ պատեցան զինև, աչս եդին խոնարհեցուցանել զիս յերկիր ։

Համարեցան ինձ որպէս առիւծ զի պատրաստի յորս, և որպէս կորիւն առիւծու՝ զի նստի դարանեալ ։

Արի Տէր, ժամանեա նոցա և խափանեա զնոսա, փրկեա զանձն իմ յամպարշտաց ի սրոյ և ի ձեռաց թշնամւոյն ։

Տէր, կորո զնոսա յերկրէ, բաժանեա և խափանեա զնոսա ի կեանս իւրեանց ։

Գաղտնեօք քովք լցան որովայնք նոցա, յագեցան կերակրովք և թողին զմնացուածս տղայոց իւրեանց ։

Ես արդարութեամբ երևեցայց երեսաց քոց, և յագեցայց յերևել փառաց քոց ։

Դատ արա ինձ Աստուած, և իրաւ արա ինձ ի դատաստանի իմում ։

Յազգէ որ ոչ է սուրբ, ի մարդոյ մեղաւորէ նենգաւորէ փրկեա զիս ։

Դու Աստուած հզօրիչ իմ ես, ընդէ՞ր մոռացար զիս, ընդէ՞ր տրտում գնամ ես ի նեղել թշնամւոյ իմոյ ։

Առաքեա Տէր զլոյս քո և զճշմարտութիւն քո, զի առաջնորդեսցեն ինձ, և հանցեն զիս ի լեառն սուրբ և ի յարկս քո ։

Մտից առաջի սեղանոյ Աստուծոյ առ Աստուած, որ ուրախ առնէ զմանկութիւն իմ ։

Խոստովան եղէց քեզ օրհնութեամբ, Աստուած Աստուած իմ ։

Արդ ընդէ՞ր տրտում ես անձն իմ, կամ ընդէ՞ր խռովես զիս. յուսա առ Աստուած, խոստովանեա նմա, փրկիչ երեսաց իմոց Աստուած է ։

Աստուած յօգնել ինձ նայեա, և Տէր յընկերել ինձ փութա ։

Ամաչեսցեն և յամօթ լիցին որք խնդրէին զանձն իմ, դարձցին յետս և ամաչեսցեն ոյք խորհէին ինձ չար ։

Դարձցին առժամայն ամաչեցեալ՝ որ ասէին ինձ վաշ վաշ ։

Ցնծասցեն և ուրախ լիցին ի քեզ ամենեքեան որ խնդրեն զքեզ Տէր ։

Ասասցեն յամենայն ժամ՝ մեծ է Աստուած, ոյք սիրեն զփրկութիւնս քո ։

Ես աղքատ և տնանկ եմ, Աստուած օգնեա ինձ. օգնական և փրկիչ իմ ես դու, Տէր իմ մի՛ յամենար ։

Տուր զօրութիւն ծառայի քո, կեցո զորդի աղախնոյ քո, և արա առ իս նշան բարութեան ։

Տեսցեն ատելիք իմ և ամաչեսցեն, զի դու Տէր օգնեցեր ինձ և մխիթարեցեր զիս ։

Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն ։ Այժմ և միշտ ։

Digitized by Google

ՆՐԳ

Շնորհեա՛ մեզ Տէր ի գիշերի զերկնային ըզխաղաղութիւն քո. և պահեա՛ զմեզ ի պատրանաց Թշնամւոյն ամենայաղթ զօրութեամբ սուրբ խաչի քոյ ։ Տէր Աստուած փրկութեան իմոյ ի տուէ կարդացի և գիշերի առաջի քոյ ։

Մտցեն աղօթք իմ առաջի քոյ Տէ՛ր խոնարհեցի ունկըն քո ի խնդրուածս իմ ։ Եկեսցէ առ մեզ Տէր պահապան ի քէն որ պահեսցէ զմեզ յամենայն ժամ ։

Առաքեա ի մեզ Տէր ըզզօրութիւն սրբոյ խաչին որ պահեսցէ զմեզ յամենայն ժամ ։ Արժանի արա Տէր զերեկս զայս խաղաղութեամբ և առանց փորձութեան անցցօ զմեօք ։

Արժանաւորեա Տէր ըզգիշերըս զայս խաղաղութեամբ և առանց մեղաց պահելով ըզմեզ ։ Ընդ մեզ Տէր Աստուած գիտասջիք հեթանոսք և պարտեցարուք զի Աստուած ընդ մեզ է ։

Եւ լըւարուք զայս ի ծագաց մինչև ի ծագս երկրի. զի ։
Եւ հըզօրացեալքըդ պարտեցարուք. զի ։

Եւ զի թէպէտ և դարձեալ զօրանայք դարձեալ ի պարտութիւն մատնեսջիք. զի ։ Եւ ըզխորհուրդըն զոր խորհիք խափանէ Տէր. զի ։

Եւ ըզբանըն զոր խօսիք մի՛ մնասցէ առ ձեզ. զի ։
Եւ քանզի յերկիւղէ ձերմէ մեք ոչ երկիցուք և ոչ խռովեսցուք. զի ։

Եւ ըզՏէր Աստուած մեր փառաւոր արասցուք և նա եղիցի մեզ յերկիւղ. զի ։ Եւ յուսացեալ եղիցուք մեք ի նա և նա եղիցի մեզ ի սրբութիւն. զի ։

Եւ յուսացեալ եղիցուք մեք ի նա և նա եղիցի մեզ ի փրկութիւն. զի ։ Եւ ահաւասիկ ես և մանկունք իմ զոր ետ ինձ Աստուած. զի ։

Digitized by Google

Եւ ժողովուրդ որ նըստէր ի խաւարի՝ ետես ըզլոյս մեծ. զի։ Եւ որ բնակեալ դէք ի խաւարի՝ եւ ի ստուերըս մահու. լոյս ծագեսցի առ ձեզ. զի։

Եւ քանզի մանուկ ծընաւ որդի եւ տըւաւ մեզ. զի։ Եւ որոյ իշխանութիւն իւր ի վերայ ուսոց իւրոց. զի։

Եւ որ կոչի անուն Նորա մեծի խորհըրդոյ հրեշտակ. զի։ Եւ ըսքանչելի խորհըրդակից. զի։

Եւ Աստուած հըզօր իշխան. զի։ Եւ իշխան խաղաղութեան Հայր հանդերձելոյ յաւիտենին. Տէր Աստուած ընդ մեզ է։

Եւ փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սըրբոյ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

ՄԱՂԹԱՆՔ

Ի մերձենալ երեկոյիս համբառնամք զձեռս մեր ի սըրբութիւն. զոր ինչ մեղաք այսօր խորհրդով բանիւ կամ գործով, ի յանկողինս մեր զղջանալով, խոստովան լինելով զգաղտնիս սրտից մերոց ծածկագիտիդ Աստուծոյ, յուսալով յողորմութիւնքո։ Եւ մեք միաբան գոչեսցուք, յիշեա զմեզ Տէր՝ յորժամ գաս արքայութեամբդ քով, և ողորմեա մեզ։

ՔԱՐՈԶ

Եւ ևս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք։

Գոհացարուք զՏեառնէ, որ իւրով ողորմութեամբն առաջնորդեաց մեզ ի գործս տուընջեան, և շնորհեաց մեզ միաբան գալ հասանել ի հանգիստ գիշերիս։ Եւ մեք յամենայն ժամ աղաչեսցուք զմարդասէրն Աստուած լինել պահապան անձանց մերոց, և Նա իւրով ողորմութեամբն պահեսցէ զմեզ, և առաջնորդեալ հասուսցէ յիւր բարութեան հանգիստն, զոր խոստացաւ սիրելեաց իւրոց ճշմարիտն Աստուած Յիսուս Քրիստոս։ Տէրն ամենակալ կեցուսցէ և ողորմեսցի։

Զհանգիստ գիշերիս խաղաղութեամբ անցուցանել հաւատով ի Տեառնէ խնդրեսցուք։

Զհրեշտակ խաղաղ։ Զքաւութիւն։ Զսրբոյ խաչին։
Եւ ևս միաբան։ Զանձինս մեր։ Ողորմեաց մեզ։

Digitized by Google

## Ա Ղ Օ Թ Ք

Տէր բարերար, որ մեծաւ գթութեամբ քով պատրաստեցեր զյաւիտենական հանգիստն առաքինութեամբ աշխատելոցն, և կոչեցեր առ քեզ քաղցր ձայնիւ զծանրաբեռնեալսն և զտաժանեալսն մեղօք, հանգիստ նոցա խոստանալով։ Շնորհեա և մեզ Տէր՝ անխռով խաղաղութեամբ զգիշերս անցուցանել. և ի ծանրութենէ մեղաց զաշխատեալքս ապահովեա ողորմութեամբ քո, և արժանաւորեա մշտնջենաւոր հանգստեան ընդ ամենայն սուրբս քո։ Եւ գոհանալով փառաւորեսցուք զքեզ ընդ Հօր և ամենասուրբ Հոգւոյդ, այժմ և միշտ և յաւիտ։

Խաղաղութիւն ամենեցուն։

Պարգևատու բարեաց և աղբիւր խաղաղութեան Տէր Աստուած մեր, յամենայն սատանայական խռովութեանց խաղաղացո զմիտս մեր և զխորհուրդս ի գիշերիս յայսմիկ և յամենայն ժամանակի։ Որպէս զի առաջնորդեալք յանցաւոր կենցաղոյս, ժամանեսցուք յաւիտենական երկնից արքայութեան քո, զոր պատրաստեցեր ի սկզբանէ աշխարհի սրբոց քոց։ Եւ ընդ նոսին գոհանալով փառաւորեսցուք զՀայր և զՈրդի և զսուրբ Հոգիդ, այժմ և։

## Ս Ա Ղ Մ Ո Ս   Ի Զ

Տէր լոյս իմ և կեանք իմ, ես յումմէ՞ երկեայց. Տէր ապաւէն կենաց իմոց, ես յումմէ՞ դողացայց։

Ի մերձենալ առ իս չարաց ուտել զմարմին իմ, նեղիչք իմ և թշնամիք իմ՝ նոքա տկարացան և անկան։

Թէ պատրաստեսցի ի վերայ իմ պատերազմ, ոչ երկիցէ սիրտ իմ. թէ յարիցէ ի վերայ իմ ճակատամարտ, սակայն և այսուիկ ի քեզ Տէր յուսացայ։

Զմի խնդրեցի ի Տեառնէ և զնոյն աղաչեմ, բնակել ինձ ի տան Տեառն զամենայն աւուրս կենաց իմոց։

Տեսանել ինձ զվայելչութիւն Տեառն և հրաման տալ ի տաճարի նորա։

Ծածկեաց զիս ի խորանի իւրում յաւուր չարի, ընդ յարկաւ արար զիս ի ծածկոյթ խորանի իւրում։

Ի վիմէ բարձր արարեր զիս, և այժմ բարձր արա զգլուխ իմ ի վերայ թշնամեաց իմոց։

Շուրջ եզէց և մատուցից ի խորանի նորա պատարագ օրհնութեան, օրհնեցից և սաղմոս ասացից Տեառն։

Digitized by Google

Լուր Տէր ձայնի իմում, զի կարդացի առ քեզ. ողորմեա ինձ և լուր ինձ, զի քեզ ասաց սիրտ իմ, և խնդրեցին երեսք իմ, զերեսս քո Տէր խնդրեցին ։

Մի դարձուցաներ զերեսս քո յինէն, և մի խոտորիր բարկութեամբ ի ծառայէ քումմէ ։

Օգնական իմ լեր Տէր, մի անարգեր զիս, և մի թողուր զիս Աստուած փրկիչ իմ ։

Հայր իմ և մայր իմ թողին զիս, և Տէր ընկալաւ զիս ։

Օրէնսդէտ արա զիս Տէր ի ճանապարհի քում, և առաջնորդեա ինձ ի շաւիղս քո ուղիղս ։

Վասն թշնամեաց իմոց, մի մատներ զիս ի ձեռս նեղչաց իմոց ։

Յարեան ի վերայ իմ վկայք մեղաց, և ստեցին ինձ յանօրէնութեան իւրեանց ։

Հաւատացի տեսանել զբարութիւն Տեառն յերկրին կենդանեաց. համբեր Տեառն և քաջալերեաց, զօրասցի սիրտ քո և համբեր Տեառն ։

Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն ։ Այժմ և միշտ ։

ԾՐԳ ՏԵԱՌՆ ՆԵՐՍԵՍԻ

ԲՁ. Նայեա սիրով Հայրըդ գթած ի քո ստեղծեալ գործըս ձեռաց. Եւ ըզբանականս հրեշտակաց տուր պահապան մեզ տըկարացս. փըրկեա զանձինս ի փորձանաց ի խաւարին շըրջող դիւաց. ‖ զի՟ ի տուընջեան և գիշերի տացուք քեզ փառս անլըռելի ։

Էին անեղ անըսկըզբան ծընունդ անճառ Որդի և բան. որ արարեր ըզտիւ գործոյ և ըզգիշեր ի հանգիստ քնոյ. տուր ի նըրնջել աչաց մարմնոյ արթուն լինել մեզ ըստ հոգւոյ. զի՟ ։

Բարուն հոգւոց բանաւորաց աղբիւր լուսոյ բաշխող շնորհաց. ի փակել դրանց բնութեանց մարմնոց լոյս տուր աչաց սըրտից մերոց. ի գիշերաց առ քեզ կանխել ընդ հրեղինացն օրհնաբանել. զի՟ ։

Սուրբըդ սըրբոց Երրորդութիւն ըզմեզ մաքրեա քեզ բնակութիւն. շնորհեա ընդ մանկանցն առագաստի հանգ-

չել ընդ քեզ ի յանկողնի. տուր ըզհայցուած բարեկա-
մին ըզփոխ երից նըկանակին. զի՟։

Երևելի լոյս ըստեղծեր զտիւ և զգիշեր բաժանե-
ցեր. ծագեա մեզ Տէր ի գիշերի ըզճառագայթս իմա-
նալի. տուր յամենայն ժամանակի զպահպանող անշ
քո հովանի. զի՟։

Սիրոյ քո հուր արկեալ յերկիր բորբոքեսցի ի հոգիս
մեր. զխորհուրդ սրտից մեր մաքրեսցէ զլոյս գիտու-
թեան քո փայլեսցէ. ի քնոյ մահու զմեզ զարթուսցէ
զմիտըս բոցով քո վառեսցէ. զի՟։

Ի քեզ նայիմք լոյսդ անմատոյց ի զգայական ծած-
կեալ լուսոյ. որ վասըն մեր եղար ի գբի և նընջեցեր
ի տապանի. առ մեզ նընջեա արթուն բնութիւն հեր-
քեա զչարին ներգործութիւն. զի՟։

Էիդ լուսոյ անըստուերի պահապանօք կամք առա-
ջի. որ փակեալ դրամբք յերեկոյին երևեցար մետա-
նին. ընդ Թովմայի առ քեզ գոչեմք Տէր և Աս-
տուած զքեզ դաւանեմք. էջ և առ մեզ յերեկոյիս և
տուր զողջոյն քո ի հոգիս։

Բամեալքս ըզքեզ Տէր աղաչեմք մեզ յօգնութիւն նա-
յեա հայցեմք պահապանդ իւրայնոյ անձանց մերոց
լեր հովանի. օթեա առ մեզ խաղաղարար և նընջեցուք
անխռովաբար. զի՟ ընդ առաւօտըս կանխեսցուք օրհ-
նել ըզքեզ ընդ Հօր Հոգւով։

Գոչման փողոյն Գաբրիելի որ ի վերջնումըն գիշերի.
լսել արա զմեզ արժանի և անշակողմն օդեաց դասի.
անշէջ վառեալ լոյս լապտերաց ըստ իմաստուն հինգ
կուսանաց. զի՟ ընդ փեսայիդ ի յառագաստ հարսանիք
հոգւով մըտցուք ի փառս։

Հալածեա ի մէնջ Տէր նըշանաւ խաչի քո. զընդ-

դիմամարտ և զաներևոյթ զազանն. Եւ մի՛ տար յա-պականութիւն զքո ժառանգութիւնս ։

Բարեխօսեա վասն մեր Աստուածածին Մարիամ. որ ծնար զՏէր Աստուած որ հովուէրըն զիսրայէլ. ա՛ մենազօր ըսքանչելի փառօքն իւրովք ։

ՄԱՂԹԱՆՔ

Տէր մի՛ դարձուցաներ զերեսս քո յինէն. Տէր բարե-րար, աղաչեմ զքեզ՝ օգնական իմ լեր Տէր. մի՛ անար-գեր զիս, և մի՛ թողուր զիս Աստուած փրկիչ իմ ։

ՔԱՐՈԶ

Աղաչեսցուք զամենակալն Աստուած և խնդրեսցուք ի Նմանէ, զի առաքեսցէ զհրեշտակ խաղաղութեան, որ եկեալ պահեսցէ զմեզ յերկիւղական գիշերիս ի դիւա-կան խռովութենէ՝ ամբողջ պահելով զհոգի և զմարմին մեր մինչև ի կատարումն ժամանակի ամաց մերոց ։ Ամենակալ Տէր Աստուած մեր, կեցո և ողորմեա ։

ԱՂՕԹՔ

Շնորհատու բարեաց՝ յամենայնի առատ անմահ Տէր, աղաչեմք զքեզ, փարատեա յանձանց մերոց զաղջամղջին և զխաւարային խորհուրդս ։ Ի պատրանաց բանսարկուին պահեա զմեզ, և շնորհեա մեզ հաւատով ապաւինիլ յա-մենասուրբ Երրորդութիւնդ՝ ի Հայր և յՈրդի և ի սուրբ Հոգիդ, այժմ և միշտ ։

Ցասուրս ողորհեցէց առտ առէ ամբիծեն. Եւ յայս ասուրս՝
Հայր մեր որ յերկինս ։

ՍԱՂՄՈՍ ՃԺԸ

Երանեալ են անբիծք ի ճանապարհի, և որք գնան յօ-րէնս Տեառն ։

Երանի որք քննեն զվկայութիւն նորա, բոլորով սըր-տիւ իւրեանց խնդրեսցեն զնա ։

Ոչ թէ որք գործեն զանօրէնութիւն ի ճանապարհս նորա գնասցեն ։

Դու պատուիրեցեր զպատուիրանս քո, ի պահել ինձ յոյժ ։

Digitized by Google

Երանի թէ յաջողեալ էին ինձ ճանապարհք իմ, ի պահել ինձ զարդարութիւնս քո ·

Ցայնժամ ես ոչ ամաչէի ի զգուշանալ ինձ ի պատուիրանս քո ։

Խոստովան եղէց քեզ Տէր յուղղութիւն սրտի իմոյ, որպէս ուսայց զիրաւունս արդարութեան քոյ ·

Զիրաւունս քո պահեցի, մի՛ թողուր զիս մինչ ի սպառ ։

Ի՞ւ ուղղեսցէ երիտասարդ զճանապարհս իւր, այլ ի պահել զբանս քո ։

Բոլորով սրտիւ իմով խնդրեցի զքեզ, մի՛ մերժեր զիս ի պատուիրանաց քոց ·

Ի սրտի իմում թագուցի զբանս քո, որպէս զի մի՛ մեղայց քեզ ։

Օրհնեալ ես դու Տէր, ուսո ինձ զարդարութիւնս քո ։

Շրթամբք իմովք պատմեցից զամենայն իրաւունս բերանոյ քո ։

Ի ճանապարհս վկայութեանց քոց զուարճացայ, որպէս յամենայն ի մեծութեան ։

Ի պատուիրանս քո հոգացայ, և զգուշացայ ի ճանապարհս քո ։

Զիրաւունս քո խօսեցայ, և ոչ մոռացայ զբանս քո ։

Հատո ծառայի քում, զի կեցից և պահեցից զբանս քո ։

Զարթո զաչս իմ, և նայեցայց ի սքանչելիս օրինաց քոց ։

Պանդուխտ եմ ես յերկրի, մի՛ թագուցաներ յինէն զպատուիրանս քո ։

Փափաքեաց անձն իմ, ի ցանկալ ինձ յիրաւունս քո յամենայն ժամ ։

Սաստեցեր ամբարտաւանից, անիծեալ ոյք խոտորեցան ի պատուիրանաց քոց ։

Ի բաց արա յինէն զնախատինս և զարհամարհանս, զի զվկայութիւնս քո խնդրեցի ·

Քանզի նստան իշխանք և չարախօսէին զինէն, այլ ծառայ քո խորհէր յիրաւունս քո ։

Զի վկայութիւնք քո խօսք իմ էին, և խորհուրդք իմ յարդարութիւն քո ։

Մերձեցաւ անձն իմ ի հող, Տէր կեցո զիս ըստ բանի քում ։

Զճանապարհս իմ պատմեցի քեզ՝ և լուար ինձ, ուսո ինձ զարդարութիւնս քո ։

Ի ճանապարհս արդարութեանց քոց իմաստուն արա զիս, և քննեցից զքանչելիս քո ։

Տքնեցաւ անձն իմ առ ի ձանձրանալ, հաստատեա զիս ի բանս քո ։

Զճանապարհս մեղաց ի բաց արա յինէն, և յօրէնս քո ողորմեա ինձ ։

Զճանապարհս ճշմարտութեան քո ընտրեցի, և զիրաւունս քո ես ոչ մոռացայ ։

Մերձեցայ ես ի վկայութիւնս քո, Տէր՝ մի՛ յամօթ առներ զիս ։

Ի ճանապարհս պատուիրանաց քոց ընթացայ, զի անդորր արարեր սրտի իմոյ ։

Օրէնսդէտ արա զիս Տէր ի ճանապարհս իրաւանց քոց, և խնդրեցից զնա յամենայն ժամ ։

Իմաստուն արա զիս Տէր, և քննեցից զօրէնս քո, և պահեցից զնա բոլորով սրտիւ իմով ։

Առաջնորդեա ինձ ի շաւիղս պատուիրանաց քոց, զի ընդ նոսա հաճեցայ ։

Խոնարհեցո զսիրտ իմ ի վկայութիւնս քո, և մի՛ յագահութիւն ։

Դարձո զաչս իմ զի մի՛ տեսից զնանրութիւն, ի ճանապարհս քո կեցո զիս ։

Հաստատեա ծառայի քում՝ զբան քո յերկիւղ քո ։

Հան յինէն զնախատինս զոր և կարծեցի, զի դատաստանք քո քաղցր են ։

Ահա ցանկացայ պատուիրանաց քոց, յարդարութեան քում կեցո զիս ։

Եկեսցէ ի վերայ իմ ողորմութիւն քո Տէր, և փրկութիւն քո ըստ բանի քում ։

Տաց պատասխանի ոյք նախատեն զիս բանիւք, զի ես ի բանս քո յուսացայ ։

Մի՛ ի բացեայ առներ ի բերանոյ իմմէ զբան ճշմարտութեան մինչև յոյժ, զի յիրաւունս քո յուսացայ ։

Պահեցի զօրէնս քո յամենայն ժամ, յաւիտեան և յաւիտեանս յաւիտենից ։

Գնայի ես յարդորրու, զի զպատուիրանս քո խնդրեցի ։

Խօսէի զվկայութիւնս քո առաջի թագաւորաց, և ոչ ամաչէի ։

Խորհէի ի պատուիրանս քո զոր սիրեցի ։

Համբարձի զձեռս իմ ի պատուիրանս քո զոր սիրեցի, և խորհէի յարդարութեան քում։

Յիշեա զբան ծառայի քո, յոր և յուսացուցեր զիս։

Սա մխիթարեաց զիս ի խոնարհութեան իմում, զի բան քո կեցոյց զիս։

Ամբարտաւանք անիրաւեցան յիս յոյժ, այլ յօրինաց քոց ես ոչ խոտորեցայ։

Յիշեցի զիրաւունս քո յաւիտենից Տէր, և մխիթարեցայ։

Տրտմութիւն կալաւ զիս ի մեղաւորաց, և ոյք թողին զօրէնս քո։

Գովելի էին ինձ իրաւունք քո, ի տեղւոջ պանդխտութեան իմոյ։

Յիշեցի ի գիշերի զանուն քո Տէր, և պահեցի զօրէնս քո։

Սա եղև ինձ ճանապարհ ի կեանս, զի զարդարութիւնս քո խնդրեցի։

Բաժին իմ ես դու Տէր, ասացի պահել ինձ զօրէնս քո։

Աղաչեցի զերեսս քո բոլորով սրտիւ իմով, ողորմեա ինձ ըստ բանի քում։

Խորհեցայ ի ճանապարհս քո, և դարձուցի զոտս իմ ի վկայութիւնս քո։

Պատրաստեցայ և ոչ խռովեցայ, զի պահեցի զպատուիրանս քո։

Տոռունք մեղաց պատեցան զինև, այլ զօրէնս քո ես ոչ մոռացայ։

Ի մէջ գիշերի յառնէի խոստովան լինել առ քեզ՝ վասն իրաւանց և արդարութեան քոյ։

Հաղորդ էի ես ամենայն երկիւղածաց քոց, որոց պահեալ էին զպատուիրանս քո։

Ողորմութեամբ Տեառն լի եղև երկիր, զարդարութիւնս քո ուսո ինձ։

Քաղցրութիւն արարեր ընդ ծառայի քում Տէր, ըստ բանի քում։

Քաղցրութիւն զխրատ և զգիտութիւն ուսո ինձ, զի ի պատուիրանս քո ես հաւատացի։

Մինչ չև խոնարհեալ էի ես մեղայ, վասն այսորիկ զբանս քո պահեցի յոյժ։

Քաղցր ես դու Տէր, և քաղցրութեամբ քով ուսո ինձ զարդարութիւնս քո։

Digitized by Google

Բազմացան յիս անիրաւութիւնք ամբարտաւանից, այլ ես բոլորով սրտիւ իմով քննեցի զպատուիրանս քո ։

Մածաւ որպէս կաթն սիրտք նոցա, այլ ես զօրէնս քո խօսեցայ ։

Բարի է ինձ՝ զի խոնարհ արարեր զիս, որպէս ուսայց զարդարութիւնս քո ։

Բարի են ինձ օրէնք բերանոյ քոյ, քան զհազարս ոսկւոյ և արծաթոյ ։

Ձեռք քո արարին և ստեղծին զիս, իմաստուն արա զիս՝ և ուսայց զպատուիրանս քո ։

Երկիւղածք քո տեսցեն զիս և ուրախ եղիցին, զի ես ի բանս քո յուսացայ ։

Ծանեայ Տէր, զի արդարութեամբ են դատաստանք քո. յիրաւի խոնարհեցուցեր զիս ։

Եղիցի ողորմութիւն քո ի մխիթարել զիս, ըստ բանի քում զծառայս քո ։

Եկեսցեն յիս գթութիւնք քո և կեցից. զի օրէնք քո խօսք իմ էին ։

Ամաչեսցեն ամբարտաւանք որ ի տարապարտուց անիրաւեցան յիս, այլ ես հոգացայ ի պատուիրանս քո ։

Խրատեսցեն զիս երկիւղածք քո, և ոյք ճանաչեն ըզվկայութիւնս քո ։

Եղիցի սիրտ իմ անբիծ յարդարութեան քում, զի մի՛ ամաչեցից ։

Կարօտացաւ անձն իմ ի փրկութիւնս քո, զի ես ի բանս քո յուսացայ ։

Ապասեցին աչք իմ բանի քում, ասացի՝ ե՞րբ մխիթարեսցես զիս ։

Եղէ ես որպէս տիկ ի պարզի, զի զարդարութիւնս քո ես ոչ մոռացայ ։

Քանի՞ ինչ են աւուրք ծառայի քոյ, ե՞րբ արասցես ինձ իրաւունս ի հալածչաց իմոց ։

Պատմեցին ինձ անօրէնք զխորհուրդս, այլ ոչ որպէս զօրէնս քո ։

Ամենայն պատուիրանք քո ճշմարիտ են, ի նանիր հալածեցին զիս, օգնեա ինձ ։

Փոքր մի ևս և կորուսանէին զիս յերկրի, այլ ես ոչ թողի զպատուիրանս քո ։

Ըստ ողորմութեան քում կեցո զիս, և պահեցից ըզվկայութիւնս բերանոյ քոյ ։

Digitized by Google

Յաւիտեան Տէր բան քո կայ յերկինս, ազգէ մինչև յազգ է ճշմարտութիւն քո։

Հաստատեցեր զերկիր, և կայ։

Հրամանի քում մնայ տիւ, զի ամենեքեան ծառայք քո են։

Եթէ ոչ օրէնք քո խոկք իմ էին, կանխաւ ես արդեօք կորուսեալ էի ի խոնարհութեան իմում։

Յաւիտեան ոչ մոռացայց զարդարութիւնս քո, զի նոքօք կեցուցեր զիս։

Քո եմ ես և կեցո զիս, զի զարդարութիւնս քո խնդրեցի։

Ինձ սպասեցին մեղաւորք ի կորուսանել, զի զվկայութիւնս քո ես ի միտ առի։

Յամենայն կատարածի տեսի զվախճան, յոյժ անդորր էին ինձ պատուիրանք քո։

Որպէս սիրեցի զօրէնս քո, զօրհանապազ խոկք իմ էին։

Քան զթշնամիսն իմ իմաստուն արարեր զիս ի պատուիրանս քո, զի յաւիտեան իմ էին։

Քան զամենայն ուսուցիչսն իմ իմաստուն եղէ, զի վկայութիւնք քո խոկք իմ էին։

Քան զծերս իմաստուն եղէ, զի զպատուիրանս քո քննեցի։

Յամենայն ճանապարհաց չարաց արգելի զոտս իմ, որպէս զի պահեցից զբանս քո։

Յիրաւանց քոց ես ոչ խոտորեցայ, զի դու օրէնսդէտ արարեր զիս։

Որպէս զի քաղցր են ի քիմս իմ բանք քո՝ քան զմեղր բերանոյ իմոյ։

Ի պատուիրանաց քոց իմացեալ՝ ատեցի զամենայն ճանապարհս չարաց, զի դու օրէնսդէտ արարեր զիս։

Ճրագ են բանք քո ոտից իմոց, և լոյս տան շաւղաց իմոց։

Երդուայ և հաստատեցի, զի պահեցից զամենայն իրաւունս արդարութեան քո։

Խոնարհ եղէ մինչև յոյժ, Տէր կեցո զիս ըստ բանի քում։

Ընդ կամս բերանոյ իմոյ հաճեա Տէր, և զիրաւունս քո ուսո ինձ։

Անձն իմ ի ձեռս քո է յամենայն ժամ, և զօրէնս քո ես ոչ մոռացայ։

Եդին ինձ մեղաւորք որոգայթ, ի պատուիրանաց քոց ես ոչ մոլորեցայ։



Digitized by Google

Ժառանգեցի զվկայութիւնս քո յաւիտեան, զի ցնծութիւն է սրտի իմոյ ։

Խոնարհեցուցի զսիրտ իմ առնել զարդարութիւնս քո յաւիտեան՝ վասն հատուցման ։

Զանօրէնս ատեցի, և զօրէնս քո սիրեցի ։

Օգնական և փրկիչ իմ ես դու, և ես ի բանս քո յուսացայ ։

Ի բաց եղերուք յինէն չարք, և քննեցից զպատուիրանս Աստուծոյ իմոյ ։

Օգնեա ինձ ըստ բանի քում և կեցո զիս, և մի յամօթ առներ զիս ի յուսոյ իմմէ ։

Օգնեա ինձ և ապրեցո զիս, և խորհեցայց յիրաւունս քո յամենայն ժամ ։

Անարգեցեր զամենեսեան որք ապստամբ եղեն յարդարութեանց քոց, զի անիրաւութեամբ էին խորհուրդք նոցա ։

Յանցաւորս համարեցայ զամենայն մեղաւորս երկրի, վասն այսորիկ սիրեցի զպատուիրանս քո ։

Բևեռեա ընդ երկիւղ քո զմարմին իմ, զի ի դատաստանաց քոց երկեայց յոյժ ։

Արարի իրաւունս և արդարութիւն, մի մատներ զիս ի ձեռս նեղչաց իմոց ։

Ընկալ զծառայս քո ի բարի, զի մի ամբարտաւանք զզուեսցեն զիս ։

Սպառեցին աչք իմ փրկութեան քում Տէր, և բանից արդարութեան քո ։

Արա ընդ ծառայի քում Տէր, ըստ ողորմութեան քում, զարդարութիւնս քո ուսո ինձ ։

Ծառայ քո եմ ես, իմաստուն արա զիս, և ծանեայց զվկայութիւնս քո ։

Ժամ է պաշտել զՏէր, խափանեցին զօրէնս քո ։

Վասն այսորիկ սիրեցի զպատուիրանս քո, քան զամենայն ոսկի և զտպազիոն ։

Ամենայն պատուիրանք քո յաջողեցան ինձ, զի ատեցի ես զճանապարհս չարաց ։

Սքանչելի են վկայութիւնք քո, վասն այսորիկ սիրեաց զնոսա անձն իմ ։

Յայտնութիւն բանից քոց լուսաւոր և իմաստուն առնէ զտղայս ։

Digitized by Google

Զբերան իմ բացի և առի զհոգի, ի պատուիրանս քո փափաքեաց անձն իմ։

Նայեաց առ իս և ողորմեա՛ ինձ ըստ իրաւունս սիրողաց անուան քո։

Զճանապարհս իմ ուղիղ արա՛ ինձ ըստ բանի քում, և մի՛ տիրեսցեն ինձ ամենայն մեղք։

Փրկեա զիս ի զրպարտութենէ մարդկան, և պահեցից զպատուիրանս քո։

Երևեցո զերեսս քո ի ծառայս քո, և ուսո ինձ զարդարութիւնս քո։

Վտակք ջուրց իջին յաչաց իմոց, զի ոչ պահեցին զօրէնս քո։

Արդար ես դու Տէր, և ուղիղ են դատաստանք քո։

Պատուիրեցեր զարդարութիւն վկայութեանց քոց Տէր, և ճշմարիտ են յոյժ։

Մաշեաց զիս նախանձ քո, զի մոռացան զբանս քո թշնամիք իմ։

Ընտրեալ է բան քո յոյժ, և ծառայ քո սիրեաց զսա։

Մանուկ եմ ես և արհամարհեալ, և զարդարութիւնս քո ես ոչ մոռացայ։

Արդարութիւն քո արդարութիւն յաւիտենից, և օրէնք քո ճշմարիտ են։

Նեղութիւնք և վիշտք գտին զիս, և պատուիրանք քո խոհք իմ էին։

Արդարութեամբ են վկայութիւնք քո յաւիտեան, իմաստուն արա և կեցո զիս։

Կարդացի առ քեզ բոլորով սրտիւ իմով, լուր ինձ Տէր, զի զարդարութիւնս քո խնդրեցի։

Աղաղակեցի առ քեզ և փրկեա զիս, և պահեցից ըզվկայութիւնս քո։

Կանխեցի տարաժամու՝ աղաղակեցի, և ես ի բանս քո յուսացայ։

Կանխեցին աչք իմ առաւօտու, ի խօսել ինձ զբանս քո։

Ձայնի իմում լուր Տէր ըստ ողորմութեան քում, Տէր յիրաւունս քո կեցո զիս։

Մերձեցուցին յիս հալածիչք իմ զանօրէնութիւն, զի յօրինաց քոց հեռի եղեն։

Մերձ ես դու Տէր, և ամենայն պատուիրանք քո ճշմարիտ են։

Digitized by Google

Ի սկզբանէ ծանեայ ի վկայութեանց քոց Տէր, զի յաւիտեան հաստատեցեր զնոսա:

Տես զխոնարհութիւն իմ և փրկեա զիս, զի զօրէնս քո ես ոչ մոռացայ:

Դատեա զդատաստանս իմ, և փրկեա զիս, և ըստ բանի քում կեցո զիս:

Հեռի է ի մեղաւորաց փրկութիւն, զի զիրաւունս քո ոչ պահեցին:

Գթութիւնք քո բազում են Տէր, և ըստ իրաւանց քոց կեցո զիս:

Բազում են որ հալածեն և նեղեն զիս, ի վկայութեանց քոց ես ոչ խոտորեցայ:

Հայէի յանագորոյնս և մաշէի, զի զպատուիրանս քո ոչ պահեցին:

Տես զի զպատուիրանս քո սիրեցի, Տէր ողորմութեամբ քով կեցո զիս:

Սկիզբն բանից քոց ճշմարտութիւն է, յաւիտեան են ամենայն իրաւունք արդարութեան քոյ:

Իշխանք հալածեցին զիս ի նանիր, և ի բանից քոց երկեաւ սիրտ իմ:

Ցնծացայ ես ի բանս քո, որպէս այն որ գտանէ աւար բազում:

Զմեղս ատեցի և անարգեցի, և զօրէնս քո սիրեցի:

Եօթն անգամ յաւուր օրհնեցից զքեզ վասն իրաւանց և արդարութեան քոյ:

Խաղաղութիւն բազում է այնոցիկ որ սիրեն զօրէնս քո, և ոչ գոյ ի նոսա գայթակղութիւն:

Սպասեցի փրկութեան քում Տէր, և զպատուիրանս քո սիրեցի:

Պահեաց անձն իմ զվկայութիւնս քո, և սիրեաց զնոսա յոյժ:

Պահեցից զպատուիրանս և զվկայութիւնս քո, զի ամենայն ճանապարհք իմ առաջի քոյ են:

Մերձեսցին խնդրուածք իմ առաջի քոյ Տէր, ըստ բանի քում իմաստուն արա զիս:

Մտցեն աղօթք իմ առաջի քոյ Տէր, և բանիւ քով փրկեա զիս:

Բղխեսցեն շրթունք իմ զօրհնութիւնս քո, յորժամ ուսուսցես ինձ զարդարութիւնս քո:

Digitized by Google

խօսեսցի լեզու իմ զբանս քո, զի ամենայն պատուի-
րանք քո արդարութեամբ են :
Եղիցի ձեռն քո ի կեցուցանել զիս, զի զպատուիրանս
քո ընտրեցի :
Ցանկացայ փրկութեան քում Տէր, և օրէնք քո խօսք
իմ էին :
Կեցցէ անձն իմ, օրհնեսցէ զքեզ, և իրաւունք քո
օգնեսցեն ինձ :
Մոլորեցայ ես որպէս զոչխար կորուսեալ, խնդրեա
զծառայս քո, զի զպատուիրանս քո ես ոչ մոռացայ :
Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն : Այժմ և միշտ :

Ե— ղնի ասէ շարականս :

ԳՁ. Ի քէն հայցեմք Հայր գթութեանց եւ Աս-
տուած մխիթարութեանց. ի տխրական գիշերային
մերձեալ ժամուս. մխիթարեա ըզմեզ ի տըրտմութեանց
մեղաց և շնորհեա զուրախութիւն գործովք արդարու-
թեան. ‖ աղաչանօք սուրբ Աստուածածնին և ա-
մենայն արդարոց :
Ըստ քաղցրագոյն աստուածային քո հրամանի կոչ-
ման Որդի Աստուծոյ. եկեալ եմք առաջի քո յերե-
կոյիս աշխատեալք եւ ծանրաբեռնեալք. թեթեւացո
ի ծանրութեանց մեղաց զանձինս. եւ զօրացո բառնալ
կամաւ ըզքաղցր լուծ քոց պատուիրանաց. աղաչա :
Գաղատիմք առ քեզ հոգւով ի հանգըստեան հա-
սեալ ժամուս մարդասէր Հոգի Աստուծոյ. յորժամ նո-
րոգես զերեսս երկրի եւ վերըստին ստանաս զոգիս
մարդկան. նորափետուր զարդարեա ըզնընջեցեալսն
մեր ըզծնեալսն ի քէն սուրբ աւազանաւն. աղաչա :
Զկենդանագիր անարատ ծընողի քո. արկանեմք
առաջի անոխակալ տէրութեանդ քո. յորժամ գաս
փառօք Հօր դատել ըզթըշնամին խաչի քոյ. ներեա
յանցանաց մերոց բարեխօսութեամբ մօր քո եւ կուսի.

աղաչեմք ըզքեզ Տէր. պահպանեա ըզմեզ ընդ հովանեաւ խաչի քո սուրբ:

Հաղորդս արա եւ ըզմեզ Տէր. ընդ սրբոց քոց ամենեցուն. որք արժանի եղեն տեսանել ըզքեզ ի յարութեան քո. արժանաւորեա Տէր ամենայն տեսանել ըզքեզ ի միւսանգամ քո գալըստեանն. օրհնութիւն առաքողի ի բարձունս:

Ի նըստել քո յատենի դատաւոր ամէնեցուն. աղաչանօք սուրբ Աստուածածնին. յիշեա ըզնընջեցեալսն ըզմեր յարժանի գայցես անմահ փառօք. քանզի քո են փառք յաւիտեանս ամէն:

ՉՈՐԵՔՇԱԲԱԹԻ

Սըրբուհի Մարիամ. սափոր ոսկի եւ տապանակ կտակարանաց. որ զի վերուստ զհացն կենաց պարգեւեցեր քաղցելոյ բնութեանս. առ նա միշտ բարեխօսեա վասըն քաւութեան մեղաց մերոց:

Դուռք անմարմնոց հրեշտակաց. քեզ երանեմն ամէնօրհնեալ կոյս Մարիամ. որ զէակից Բանն որ ընդ Հօր կրեցեր ի քեզ անսերմնապէս. առ նա միշտ բարեխօսեա վասըն քաւութեան:

Վասն որոյ և մեք հաւատացեալքս. քեզ երկրպագեմք Քրիստոս եւ արտասուօք հայցեմք ի քէն. բարեխօսութեամբ Աստուածածնին զաստուածային լոյս քո ծագեա յանձինս մեր. օրհնեմք ըզքեզ ի յարութեան երեկոյիս անհաւոր թագաւոր:

ՀԻՆԳՇԱԲԱԹԻ

Առաքեալք Աստուծոյ. ընտրեալք ի սկզբանէ նախ քան զաշխարհս. որք արժանի եղէք տե-

Digitized by Google

ռանել զանուանեալն հրեղինաց. ‖ բարեխօսեցէք առ Տէր վասն մանկանց եկեղեցւոյ ։ Բարեկամք Քրիստոսի. համարձակութք աստուածայինն խորհըրդոցն. ա յք ի հոսանուտ մեղաց ծովէս վերածէք զմարդիկ ի կեանս անմահ. բարեխօ ։ Գերագոյն քան զըզբնաւս. անճառելույն հասէք երանութեան. յք ի գալըստեան Տեառըն նըստիք յերկոտասան աթոռսըն Քրիստոսի. բարե ։

ՈՒՐԲԱԹԻ

Զօրունակեալ պահէին յանեղաշէն դրախտին ըղձանապարհս ծառոյն կենաց. քրովբէական հըրեղէն բոցեղէն սրովբէիւք. այսօր արտաքսեալ ցուցար յերկրի աստուածազարդ փայտ կենաց եւ փրկութեան. ‖ զքեզ ծընեալն մանկունք սուրբ եկեղեցւոյ ։ Աբրեկայ. ծառոյն վերաբերեալ խոյ յողջակէզ փոխանակ իսահակայ. այլ ի վերայ քո զենաւ գառն անարատ. ի յաղթութիւն Հօր և ի բառնալ ըզմեղըս մեր. զքեզ ։ Զարծանըք պօղոսեան. դաւանեալ ըզքեզ աստուածային Բանին տեղի եւ զենարան. քանզի քեւ ապրեցաք ի խածանող եւ յանմահին զազանէն. Եւ ի վերայ քո հեղեալ շիթք անարատ արեանն Միածնին ջնջեաց ըզմեղս. զքեզ ։

ԵՐԿՈՒՇԱԲԱԹԻ

Երկնաւոր հօտ ընտրեալ. զոր հովիւըն քաջ թողեալ յերկինս. եւ եկեալ ի խնդիր մեզ մոլորեալոցս. որով լըցեալ զթիւ հարիւրորդ. արար ուրախութիւն ի յերկինս երկնաւորացդ. ‖ աղաչեմք ըզձեզ. բարեխօս լերուք առ Տէր վասն քաւութեան

մեղաց մերոց ։ Տեսանողք անտեսին. խորհրդածուք խորոցն Աստուծոյ. որք իջեալ ընդ Միածնին սպասաւորել տնօրէնութեանն. ի ծնընդեանն աւետաւորք հովուացն. եւ կանանցն իւղաբերից կենաց քարոզք ըզկենդանւոյն. աղաչեմք ։ Պահապանք աշխարհի. բանակք Տեառն չուրջ զերկիւղածովք. բարեկամք ազգի մարդկան միջնորդք մահու եւ յարութեան. Միքայէլ և Գաբրիէլ մեծք. որ կայք միշտ առաջի ամենասուրբ Երրորդութեանն աղաչեմք ։

ԵՐԵՔՇԱԲԱԹԻ

Երկնաւոր փեսայ անըստուեր լոյս իմանալի. որ ի յերկնից իջեր. ի սէր հարսին քո եկեղեցւոյ. զոր խօսեցաւ քեզ բարեկամն և փեսաւէրն քո Յովհաննէս. ‖ սորին մաղթանօք ողորմեա ։ Քառակերպիցն անհաս եւ անտես ի սերովբէից. սըրբութեանց սուրբ և տէր բոլորից. խոնարհեցար ի Յորդանան. հայցելով ի ծառայէն մաքրութիւն ջրոյ ի լուանալ ըզմեղս Ադամայ. սորին ։ Որ յամլորդւոյն վըկայեցար գառն Աստուծոյ բարձող մեղաց. զոր զերագոյն արդարոց. ծանուցեր մեծ ի ծնունդս կանանց. եւ ճրագ օրինացն. որ և ի դըժոխս ըզփըրկական գալուստ քո քարոզեաց. սորին ։

ՄԱՂԹԱՆՔ

Հոգւոցն հանգուցելոց Քրիստոս Աստուած արա հանգիստ և ողորմութիւն, և մեզ մեղաւորացս շնորհեա զթողութիւն յանցանաց ։

Digitized by Google

## ՔԱՐՈԶ

Եւ ևս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք ։

Վասն հանգուցեալ հոգւոցն աղաչեսցուք զփրկիչն մեր Քրիստոս, զի զնոսա ընդ արդարսն դասեսցէ, և զմեզ կեցուսցէ շնորհիւ ողորմութեան իւրոյ ։ Ամենակալ Տէր Աստուած մեր, կեցո և ողորմեա ։

Տէր ողորմեա ․ Տէր ողորմեա ․ Տէր ողորմեա ։

## ԱՂՕԹՔ

Քրիստոս Որդի Աստուծոյ անոխակալ և բարեգութ՝ գթա քո արարչական սիրովդ ի հոգիս հանգուցեալ ծառայից քոց ։ Յիշեա յաւուր մեծի գալստեան արքայութեան քո․ արա արժանի ողորմութեան՝ քաւութեան և թողութեան մեղաց․ դասաւորեալ պայծառացո ընդ սուրբս քո յաջակողմեան դասուն ․ զի դու ես Տէր և արարիչ ամենեցուն, դատաւոր կենդանեաց և մեռելոց ։ Եւ քեզ վայելէ փառք իշխանութիւն և պատիւ, այժմ և ։

Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս ․ ամէն ։

Հայր մեր որ յերկինս ։



Digitized by Google

# ԿԱՐԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ
# ՀԱՍԱՐԱԿԱՑ ԱՂՕԹԻՑ
## ՀԱՆԳՍՏԵԱՆ ԺԱՄՈՒՆ

ՈՐ ԿԱՏԱՐԻ Ի ԴԷՄՍ ՀՕՐ ԱՍՏՈՒԾՈՅ, ԶԻ ՊԱՀՊԱՆՈՂԱԿԱՆ ԱՋՈՎ ՄԻԱԾՆԻՆ ՊԱՀԵՍՑԷ ԶՄԵԶ Ի ԽԱՒԱՐԱՅԻՆ ԳԻՇԵՐԻՍ



*Առաքեա Տէր զլոյս քո և զճշմարտութիւն քո, զի առաջնորդեսցեն ինձ և հանիցեն զիս ի լեառն սուրբ և ի յարկս քո:*

*Մտից առաջի սեղանոյ Աստուծոյ առ Աստուած, որ ուրախ առնէ զմանկութիւն իմ:*

*Խոստովան եղէց քեզ օրհնութեամբ Աստուած Աստուած իմ:*

*Արդ ընդէ՞ր տրտում ես անձն իմ, կամ ընդէ՞ր խռովես զիս. յուսա առ Աստուած, խոստովանեա նմա, փրկիչ երեսաց իմոց Աստուած է:*

*Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն: Այժմ և միշտ:*

*Եւ ևս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք, ընկալ կեցո:*

*Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ:*

### ՍԱՂՄՈՍ ՃԺԸ

*Եկեսցէ ի վերայ իմ ողորմութիւն քո Տէր, և փրկութիւն քո ըստ բանի քում:*

*Տաց պատասխանի ոյք նախատեն զիս բանիւք, զի ես ի բանս քո յուսացայ:*

*Մի՛ ի բացեայ առներ ի բերանոյ իմմէ զբան ճշմարտութեան մինչև յոյժ, զի յիրաւունս քո յուսացայ:*

*Պահեցի զօրէնս քո յամենայն ժամ, յաւիտեան և յաւիտեանս յաւիտենից:*

*Գնայի ես յանդորրու, զի զպատուիրանս քո խնդրեցի:*

*Խօսէի զվկայութիւնս քո առաջի թագաւորաց, և ոչ ամաչէի:*

*Խորհէի ի պատուիրանս քո զոր սիրեցի:*

Digitized by Google

Համբարձի զձեռս իմ ի պատուիրանս քո զոր սիրեցի, և խորհէի յարդարութեան քում:

Յիշեա զբան ծառայի քոյ, յոր և յուսացուցեր զիս:

Սա մխիթարեաց զիս ի խոնարհութեան իմում, զի բան քո կեցոյց զիս:

Ամբարտաւանք անիրաւեցան յիս յոյժ, այլ յօրինաց քոց ես ոչ խոտորեցայ:

Յիշեցի զիրաւունս քո յաւիտենից Տէր, և մխիթարեցայ:

Տրտմութիւն կալաւ զիս ի մեղաւորաց, և ոյք թողին զօրէնս քո:

Գովելի են ինձ իրաւունք քո՝ ի տեղւոջ պանդխտութեան իմոյ:

Յիշեցի ի գիշերի զանուն քո Տէր, և պահեցի զօրէնս քո:

Սա եղև ինձ ճանապարհ ի կեանս, զի զարդարութիւնս քո խնդրեցի:

Զանօրէնս ատեցի, և զօրէնս քո սիրեցի:

Օգնական և փրկիչ իմ ես դու, և ես ի բանս քո յուսացայ:

Ի բաց եղերուք յինէն չարք, և քննեցից զպատուիրանս Աստուծոյ իմոյ:

Օգնեա ինձ ըստ բանի քում և կեցո զիս, և մի՛ յամօթ առներ զիս ի յուսոյ իմմէ:

Օգնեա ինձ և ապրեցո զիս, և խորհեցայց յիրաւունս քո յամենայն ժամ:

Անարգեցեր զամենեսեան որք ապստամբ եղեն յարդարութեանց քոց, զի անիրաւութեամբ էին խորհուրդք նոցա:

Յանցաւորս համարեցայ զամենայն մեղաւորս երկրի, վասն այսորիկ սիրեցի զպատուիրանս քո:

Բևեռեա ընդ երկիւղ քո զմարմին իմ, զի ի դատաստանաց քոց երկեայց յոյժ:

Մերձեսցին խնդրուածք իմ առաջի քոյ Տէր, ըստ բանի քում իմաստուն արա զիս:

Մտցեն աղօթք իմ առաջի քոյ Տէր, և բանիւ քով փրկեա զիս:

Բղխեսցեն շրթունք իմ զօրհնութիւնս քո, յորժամ ուսուսցես ինձ զարդարութիւնս քո:

Խօսեսցի լեզու իմ զբանս քո, զի ամենայն պատուիրանք քո արդարութեամբ են:

Digitized by Google

Եղիցի ձեռն քո ի կեցուցանել զիս, զի զպատուիրանս քո ընտրեցի։

Ցանկացայ փրկութեան քում Տէր, և օրէնք քո խօսք իմ էին։

Կեցցէ անձն իմ, օրհնեսցէ զքեզ, և իրաւունք քո օգնեսցեն ինձ։

Մոլորեցայ ես որպէս ոչխար կորուսեալ, խնդրեա զծառայս քո, զի զպատուիրանս քո ես ոչ մոռացայ։

Մի՛ եկեսցեն ի վերայ մեր ոտք ամբարտաւանից, և ձեռք մեղաւորաց մի՛ դողացուսցեն զմեզ։

Անդ անկցին ամենեքեան որք գործեն զանօրէնութիւն. մերժեսցին, և այլ մի՛ կարասցեն հաստատել։

Ես ի Տէր յուսացայ. ցնծացայց և ուրախ եղէց յԱստուած փրկիչ իմ։

Տէր Տէր ետ ինձ զօրութիւն, և կացոյց զոտս իմ ի հաստատութեան. ի վերայ պարանոցի թշնամւոյն կացոյց զիս, և հանգոյց զիս երագ երագ։

Որ բնակեալ է յօգնութիւն Բարձրելոյն, ընդ հովանեաւ Աստուծոյ յերկինս հանգիցէ։

Ասասցէ Տեառն, ընդունելի իմ ես, ապաւէն իմ Աստուած, և ես յուսամ ի Նա։

Նա փրկեսցէ զիս յորոգայթէ որսողին, և ի բանից խռովութենէ։

Ի թիկնամէջս իւր ընկալցի զքեզ, ի հովանի թևոց նորա յուսասցիս։

Որպէս զէն՝ շուրջ եղիցի զքև ճշմարտութիւն Նորա։

Ոչ երկիցես դու յերկիւղէ գիշերի, և ոչ ի նետէ որ թռչի ի տուէ։

Ցիրէ որ շրջի ի խաւարի, ի գայթակղութենէ դիւին ի հասարակ աւուր։

Անկցին ի կողմանէ քումմէ հազարք և բիւրք ընդ աջմէ քումմէ, որ առ քեզ ինչ ոչ մերձեսցին։

Բայց միայն աչօք քովք հայեսցիս դու, և զհատուցումն մեղաւորաց տեսցես. զի դու Տէր յոյս իմ ես։

ԶԲարձրեալն արարեր քեզ ապաւէն. ոչ հասցեն առ քեզ չարք, և տանջանք մի՛ մերձեսցին ի յարկս քո։

Հրեշտակաց իւրոց պատուիրեալ է վասն քո, պահել զքեզ յամենայն ճանապարհս քո։

Ի բազուկս իւրեանց ընկալցին զքեզ, զի մի՛ երբեք հարցես զքարի զոտն քո։

Digitized by Google

Ի վերայ իժից և քարբից գնասցես դու, առ ոտն կոխեսցես պառիւծն և զվիշապն ։

Քանզի յիս յուսացաւ և փրկեցից զնա, հովանի եղէց նմա, զի ծանեաւ զանուն իմ ։

Կարդասցէ առ իս՝ և ես լուայց նմա, և առ նմա եղէց ի նեղութեան ։

Փրկեցից և փառաւոր արարից զնա, երկայնաւուրբք լցուցից և ցուցից նմա զփրկութիւն իմ ։

Առ քեզ Տէր համբարձի զաչս իմ, որ բնակեալդ ես ի յերկինս ։

Որպէս աչք ծառայի ի ձեռն Տեառն իւրոյ, և որպէս աչք աղախնոյ ի ձեռն տիկնոջ իւրոյ ։

Այնպէս են աչք մեր առ քեզ Տէր Աստուած մեր, մինչև ողորմեսցիս ի վերայ մեր ։

Ողորմեաց մեզ Տէր, ողորմեաց մեզ, զի բազում լցաք արհամարհանօք ։

Եւս առաւել լցան անձինք մեր նախատանօք՝ որ նախատէին զմեզ, և արհամարհանօք ամբարտաւանից ։

Աստուած յանուան քում կեցո զիս, և ի զօրութեան քում իրաւ արա ինձ ։

Աստուած լուր աղօթից իմոց, ունկն դիր բանից բերանոյ իմոյ ։

Օտարք յարեան ի վերայ իմ, և հզօրք խնդրեցին զանձն իմ, և ոչ համարեցան զքեզ Աստուած առաջի իւրեանց ։

Ահա Աստուած օգնական իմ, և Տէր ընդունելի հոգւոյ իմոյ ։

Ի դարձուցանել զչարն ի թշնամիս իմ, ճշմարտութեամբ քով սատակեա զնոսա ։

Ես կամօք իմովք պատարագս մատուցից քեզ, և խոստովան եղէց անուան քում Տէր, զի բարի է ։

Յամենայն նեղութենէ իմմէ փրկեցեր զիս, և ի թշնամիս իմ ետես ակն իմ ։

Օրհնեալ ես դու Տէր Աստուած հարցն մերոց, գովեալ և առաւել բարձրացեալ յաւիտեան ։

Եւ օրհնեալ է անուն սուրբ փառաց քոց. գովեալ և առաւել ։

Օրհնեալ ես ի տաճարի փառաց սրբութեան քոյ. գով ։

Օրհնեալ ես ի վերայ աթոռոյ արքայութեան քոյ. գով ։

Օրհնեալ ես որ նստիս ի քրովբէս, և հայիս յանդունդս. գովեալ :

Օրհնեալ ես ի վերայ հաստատութեան երկնից. գով:

Օրհնեցէք զԱստուած ի սրբութեան նորա . օրհնեցէք զնա ի հաստատութեան զօրութեան նորա :

Օրհնեցէք զնա ի զօրութեան նորա. օրհնեցէք զնա ի բազում մեծութեան նորա :

Օրհնեցէք զնա ի ձայն օրհնութեան. օրհնեցէք զնա սաղմոսիւք և օրհնութեամբ :

Օրհնեցէք զնա ցնծութեամբ. գովեցէք զնա ուրախութեամբ :

Օրհնեցէք զնա ի բանս քաղցր. գովեցէք զնա ի բարբառ լսելի :

Օրհնեցէք զնա ի ձայն գոհութեան. ամենայն հոգիք օրհնեցէք զՏէր :

Արդ արձակեա զծառայս քո Տէր ըստ բանի քում ի խաղաղութիւն. զի տեսին աչք իմ զփրկութիւն քո, զոր պատրաստեցեր առաջի ամենայն ժողովրդոց :

Լոյս ի յայտնութիւն հեթանոսաց, և փառք ժողովրդեան քում Իսրայելի :

Զգեցեր զձեռն քո և փրկեաց զիս աջ քո, և Տէր հատուցէ ընդ իմ:

Տէր ողորմութիւն քո յաւիտեան, զգործս ձեռաց քոց մի անտես առներ :

Տէր, հան ի բանտէ զանձն իմ, գոհանամ զանուանէ քումմէ :

Եւ քեզ սպասեն արդարք, մինչև հատուսցես :

Մեծացուսցէ անձն իմ զՏէր, և ցնծասցէ հոգի իմ Աստուծով փրկչաւ իմով :

Այց արար ի վերայ խոնարհութեան աղախնոյ իւրոյ. այսուհետև երանեսցեն ինձ ամենայն ազգք :

Արար ընդ իս մեծամեծս հզօրն . և սուրբ է անուն նորա :

Ողորմութիւն արար ազգաց յազգս երկիւղածաց իւրոց, և արար զօրութիւն բազկաւ իւրով:

Ցրուեաց զամբարտաւանս ի մտաց սրտից, և քակեաց զհզօրս յաթոռոց :

Զխոնարհս բարձրացոյց, զկարօտս ելից բարութեամբ, և զմեծատունս արձակեաց ունայնս :

Digitized by Google

Պաշտպանեաց Իսրայէլի ծառայի իւրոյ՝ յիշելով զողորմութիւն իւր :

Որպէս խօսեցաւ առ հարս մեր՝ ընդ Աբրահամու և զաւակի նորա յաւիտեան :

Տուր զօրութիւն ծառայի քոյ, կեցո զորդի աղախնոյ քոյ, և արա առ իս նշան բարութեան :

Տեսցեն ատելիք իմ և ամաչեսցեն, զի դու Տէր օգնեցեր ինձ և մխիթարեցեր զիս :

Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն : Այժմ և միշտ :

## ՄԱՂԹԱՆՔ

Անձն իմ ի ձեռս քո յամենայն ժամ, և ի սուրբ խաչ քո յուսացեալ եմ Թագաւոր երկնաւոր. զբազմութիւն սըրբոց քոց բարեխօս ունիմք առ քեզ : Որ երկայնամիտդ ես առ ամենեսեան, մի՛ անտես առներ զապաւինեալքս ի քեզ. այլ պահեա պատուական և սուրբ խաչիւ քո ի խաղաղութեան :

## ՔԱՐՈԶ

Աղաչեսցուք զամենակալն Աստուած և խնդրեսցուք ի նմանէ, զի առաքեսցէ զհրեշտակ խաղաղութեան, որ եկեալ պահեսցէ զմեզ յերկիւղական գիշերիս ի դիւական խռովութենէ՝ ամբողջ պահելով զհոգի և զմարմին մեր մինչև ի կատարումն ժամանակի ամաց մերոց : Ամենակալ Տէր Աստուած մեր, կեցո և ողորմեա :

Զհանգիստ գիշերիս խաղաղութեամբ անցուցանել հաւատով ի Տեառնէ խնդրեսցուք :

Զհրեշտակ խաղաղ : Զքաւութիւն : Զսրբոյ խաչին :
Եւ ևս միաբան : Զանձինս մեր : Ողորմեաց մեզ :

## ԱՂՕԹՔ

Տէր Աստուած մեր դու պահեա զմեզ խաղաղութեամբ ի գիշերիս յայսմիկ և յամենայն ժամանակի : Ընդ սուրբ երկիւղ քո բևեռեալ պահեա զմիտս և զխորհուրդս մեր. որպէս զի յամենայն ժամ քև պահպանեալ լիցուք յորոգայթից թշնամւոյն : Եւ քեզ հանցուք զօրհնութիւն և զփառս Հօր և Որդւոյ և Հոգւոյդ սրբոյ, այժմ և միշտ :

Խաղաղութիւն ամենեցուն :

Հրեշտակի խաղաղութեան յանձն արա զանձինս մեր

Տէր զօրութեանց, որ եկեալ պահեսցէ զմեզ անխռով ի տուէ և ի գիշերի, յարթնութեան և ի հանգստեան մերում. զի դու ես արարիչ լուսոյ և հաստիչ գիշերոյ: Եւ այժմ աղաչեմք զքեզ Տէր Աստուած մեր, զհանգիստ գիշերիս շնորհեա խաղաղութեամբ անցուցանել: Եւ հասանել ի պաշտօն առաւօտուն յերկրպագութիւն և ի փառաբանութիւն ամենասուրբ Երրորդութեանդ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

ՍԱՂՄՈՍ Դ

Խաղաղութեամբ յայս և ի սոյն ննջեսցուք և զարթիցուք. զի դու Տէր միայն առանձին յուսով քով բնակեցուցեր զմեզ:

Ի կարդալ իմում լուար ինձ Աստուած, ըստ արդարութեան ի նեղութեան ինձ անդորր արարեր. ողորմեա ինձ և լուր աղօթից իմոց:

Որդիք մարդկան, մինչև յե՞րբ էք խստասիրտք. ընդէ՞ր սիրէք զնանրութիւն, և խնդրէք զստութիւն:

Ծաներուք զի սքանչելիս արար Տէր սրբոյ իւրում. և Տէր լուիցէ ինձ ի կարդալ իմում առ նա:

Բարկանայք՝ և մի՛ մեղանչէք. զոր ինչ ասէք ի սիրտս ձեր՝ յանկողինս ձեր զղջացարուք:

Մատուցէք պատարագս արդարութեան, և յուսացարուք ի Տէր:

Բազումք ասէին թէ ո՞ ցուցցէ մեզ զբարութիւն Տեառն. Նշանեցաւ առ մեզ լոյս երեսաց քոց, և ետուր ուրախութիւն սրտից մերոց:

Ի պտղոյ ցորենոյ գինւոյ ձիթոյ իւրեանց լցուցեր զնոսա:

Խաղաղութեամբ յայս և ի սոյն ննջեսցուք և զարթիցուք. զի դու Տէր միայն առանձին յուսով քով բնակեցուցեր զմեզ:

Ալէլուիա որթի:
Խաղաղութիւն ամենեցուն:
Եւ ընդ հոգւոյդ քում:
Երկիւղածութեամբ լուարուք:
Սրբոյ աւետարանիս որ ըստ Յովհաննու:
Փառք քեզ Տէր Աստուած մեր: — Պռոսխումէ:
Ասէ Աստուած:

Տէրն մեր Յիսուս Քրիստոս ասէ.

Ամէն ամէն ասեմ ձեզ. եթէ ոչ հատն ցորենոյ անկեալ յերկիր մեռանիցի՝ ինքն միայն կայ. ապա եթէ մեռանիցի, բազում արդիւնս առնէ: Որ սիրէ զանձն իւր՝ արձակէ զնա. և որ ատեայ զանձն իւր յաշխարհիս յայսմիկ, ի կեանսն յաւիտենականս պահեսցէ զնա: Եթէ ք զիս պաշտեսցէ, զկնի իմ եկեսցէ. և ուր եսն եմ, անդ և պաշտօնեայն իմ եղիցի: Եթէ ոք զիս պաշտիցէ, պատուեսցէ զնա Հայրն իմ:

Փառք քեզ Տէր Աստուած մեր:

ՔԱՐՈԶ

Սուրբ խաչիւս աղաչեսցուք զՏէր, զի սովաւ փրկեսցէ զմեզ ի մեղաց, և կեցուսցէ շնորհիւ ողորմութեան իւրոյ: Ամենակալ Տէր Աստուած մեր, կեցո և ողորմեա:

ԱՂՕԹՔ

Պահպանեա զմեզ Քրիստոս Աստուած մեր ընդ հովանեաւ սուրբ և պատուական խաչիւդ քով ի խաղաղութեան. փրկեա յերևելի և յաներևոյթ թշնամւոյն: Արժանաւորեա գոհութեամբ փառաւորել զքեզ ընդ Հօր և ընդ սրբոյ Հոգւոյդ, այժմ և միշտ և յաւիտեանս:

Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս. ամէն:
Հայր մեր որ յերկինս:

ՄԱՂԹԱՆՔ

Անկանիմք առաջի քո Աստուածածին և աղաչեմք զանարատ զկոյսդ. բարեխօսեա վասն անձանց մերոց, և աղաչեա զմիածին Որդիդ՝ փրկել զմեզ ի փորձութենէ և յամենայն վտանգից մերոց:

Որ արձակիչդ ես կապելոց՝ պարգևատու ամենեցուն, այսօր հայցմամբ ծերունւոյն արձակեա և զիս զբազմամեղս ի կապանաց մահու ի կեանսդ յաւիտենից:

Մաղթանք զօրաւորք ընդդէմ արհաւրաց գիշերայնոց՝ սրբոյն Գրիգորի Նարեկացւոյ:

Ընկալ քաղցրութեամբ Տէր Աստուած հզօր, զդառնացողիս զաղաչանս: Մատիր գթութեամբ առ պատ-



Digitized by Google

կառեալս դիմաց ։ Փարատեա ամենապարգև զամօթական տխրութիւնս ։ Բարձ յինէն ողորմած զանբերելի ծանրութիւնս ։ Անջրպետեա հնարաւոր զմահացու կրթութիւնս ։ Աւարեա միշտ յաղթող զխաբողին հաճութիւնս ։ Բացադրեա վերնային զմոլեկոյն մառախուղ ։ Կնքեա կեցուցիչ զկորուսչին ընթացմունս ։ Ցրուեա ծածկատես զըմբռնողին չար գտմունս ։ Խորտակեա անքնին զմարտողին դիմեցմունս ։ Տեառնագրեա քո անուամբդ զլուսանցոյց երդ յարկիս ։ Պարփակեա քո ձեռամբդ զառաստաղ տաճարիս ։ Գծագրեա քո արեամբդ զմուտ սեմոց սենեկիս ։ Կերպացո զքո նշանդ ի հետս ելից մաղթողիս ։ Ամրացո քո աջովդ զհանգստեան խշտի ։ Մաքրեսցես ի հաղբից զծածկարան անկողնոյս ։ Պահեսցես քո կամօքդ զտառապեալ անձն ոգւոյս ։ Անխարդախ արարցես զքո շնորհեալ շունչ մարմնոյս ։ Կացուսցես շրջափակ զպար զօրուդ երկնայնոյ ։ Կարգեսցես ի դիմի ընդդէմ դիւացն դասու ։ Տուր հանգիստ քերկրութեան մահահանգոյնս նիրհման ի խորութեան գիշերիս բարեխօսութեամբ հայցուածոց սրբոյ Աստուածածնիդ և ամենայն ընտրելոց ։ Ամփոփեալ պարուրեա զպատուհան տեսութեանց զգայարանացս իմաստից անզարհուրելի զետեղմամբ ի ծփական խռովութեանց կենցաղական զրաղմանց, անրջական երազոց, խօլականաց ցնորից, յիշատակաւ քոյ յուսոյդ՝ անմնասելի պահպանեալ ։ Եւ սթափեալ վերստին ի ննջմանէ ծանրութեան ամենազգաստ արթնութեամբ, հոգենորոգ զուարթութեամբ ի քեզ արձանացեալ, զայս ձայն մաղթանաց բուրմամբ հաւատոց քեզ ամէնօրհնեալ Թագաւոր փառաց անճառից՝ փառաբանողաց երկնազումար խմբից երգակցեալ յերկինս առաքել ։ Զի դու փառաւորեալ ես յամենայն արարածոց յաւիտեանս յաւիտենից . ամէն ։

Աղօթք [illegible] սրբոյն Գրիգորի Նարեկացւոյ ։

Որդի Աստուծոյ կենդանւոյ օրհնեալ յամենայնի, Հօրդ ահաւորի անքնին ծնունդ ։ Որ տկարանայ առ ի քէն և ոչ ինչ ։ Որ ի ծագել անստուեր նշուլից ողորմութեան քոյ փառաց՝ հալին մեղք, հալածին դևք, ջնջին յանցանք, խզին կապանք, խորտակին շղթայք, կենդանածնին մահացեալք, բժշկին հարուածք, ողջանան վէրք, քաւնին

ապականութիւնք, անզգի տան տխրութիւնք, նախանձին հեծութիւնք, փախնու խաւարն, մեկնի մէգն, մերժի մառախուղն, փարատի մռայլն, ապառի աղջամուղջն, վերանայ մութն, գնայ գիշերն, տարագրի տագնապն, ջնջեան չարիքն, հալածին յուսահատութիւնքն, և թագաւորէ ձեռն քո ամենակալ, քաւիչդ ամենայնի։ Որ ոչ եկիր կորուսանել զմարդկան ոգիս, այլ կեցուցանել. թող ինձ զանթիւ չարիսն իմ՝ բազում ողորմութեամբդ. զի դու միայն ես յերկնի անճառ և յերկրի անզննին, ի տորր գոյի՝ և յեզրս ծագաց աշխարհի. սկիզբն ամենայնի և յամենայնի, ամենայն լրմամբ օրհնեալ ի բարձունս։ Եւ քեզ ընդ Հօր և Հոգւոյդ սրբոյ փառք յաւիտեանս. ամէն։

Աղօթք խոստովանողական անձին հաւատացելոյ ի Քրիստոս, զոր արարեալ է տեառն Ներսիսի Հայոց կաթողիկոսի ։

Հաւատով խոստովանիմ և երկիր պագանեմ քեզ Հայր և Որդի և սուրբ Հոգի, անեղ և անմահ բնութիւն, արարիչ հրեշտակաց և մարդկան և ամենայն եղելոց. ողորմեա քո արարածոց։

Հաւատով խոստովանիմ և երկիր պագանեմ քեզ անբաժանելի լոյս միասնական սուրբ Երրորդութիւն և մի Աստուածութիւն, արարիչ լուսոյ և հալածիչ խաւարի. հալածեա ի հոգւոյ իմմէ զխաւար մեղաց և անգիտութեան, և լուսաւորեա զմիտս իմ ի ժամուս յայսմիկ աղօթել քեզ ի հաճոյս և ընդունել ի քէն զխնդրուածս իմ. և ողորմեա ինձ բազմամեղիս ։

Հայր երկնաւոր Աստուած ճշմարիտ, որ առաքեցեր զՈրդիդ քո սիրելի ի խնդիր մոլորեալ ոչխարին, մեղայ յերկինս և առաջի քո. ընկալ զիս որպէս զանառակ որդին, և զգեցո ինձ զպատմուճանն առաջին, զոր մերկացայ մեղօք. և ողորմեա քո արարածոց և ինձ բազմամեղիս ։

Որդի Աստուծոյ Աստուած ճշմարիտ, որ խոնարհեցար ի հայրական ծոցոյ, և առեր մարմին ի սրբոյ կուսէն Մարիամայ վասն մերոյ փրկութեան, խաչեցար և թաղեցար և յարեար ի մեռելոց և համբարձար առ Հայր, մեղայ յերկինս և առաջի քո. յիշեա զիս որպէս զաւազակն յորժամ գաս արքայութեամբ քով. և ողորմեա ։

Հոգի Աստուծոյ Աստուած ճշմարիտ, որ իջեր ի Յոր-

դանան և ի վերնատունն, և լուսաւորեցեր զիս մկրտութեամբ սուրբ աւազանին, մեղայ յերկինս և առաջի քո. մաքրեա զիս վերստին աստուածային հրով քոյ որպէս հրեղէն լեզուաք զառաքեալսն. և ողորմեա։

Անեղ բնութիւն, մեղայ քեզ մտօք իմովք, հոգւով և մարմնով իմով. մի՛ յիշեր զմեղս իմ զառաջինս վասն անուանդ քում սրբոյ. և ողորմեա։

Տեսող ամենայնի, մեղայ քեզ խորհրդով, բանիւ և գործով. ջնջեա զձեռագիր յանցանաց իմոց, և գրեա զանուն իմ ի դպրութեան կենաց. և ողորմեա։

Քննող գաղտնեաց, մեղայ քեզ կամաւ և ակամայ, գիտութեամբ և անգիտութեամբ. թողութիւն շնորհեա մեղաւորիս, զի ի ծննդենէ աւազանին մինչև ցայսօր մեղուցեալ եմ առաջի աստուածութեանդ քոյ՝ զգայարանօք իմովք և ամենայն անդամօք մարմնոյս. և ողորմեա։

Ամենախնամ Տէր, դիր պահապան աչաց իմոց զերկիւղ քո սուրբ՝ ոչ ևս հայել յարատ, և ականջաց իմոց ոչ ախորժել լսել զբանս չարութեան, և բերանոյ իմոյ ոչ խօսել զստութիւն, և սրտի իմոյ ոչ խորհել զչարութիւն, և ձեռաց իմոց ոչ գործել զանիրաւութիւն, և ոտից իմոց ոչ գնալ ի ճանապարհս անօրէնութեան. այլ ուղղեա զշարժումն սոցա լինել ըստ պատուիրանաց քոց յամենայնի. և ողորմեա։

Հուր կենդանի Քրիստոս, զհուր սիրոյ քոյ զոր արկեր յերկիր բորբոքեա յանձն իմ. զի այրեսցէ զաղտ հոգւոյ իմոյ, և սրբեսցէ զխիղճ մտաց իմոց, և մաքրեսցէ զմեղս մարմնոյ իմոյ, և վառեսցէ զլոյս գիտութեան քո ի սրտի իմում. և ողորմեա։

Իմաստութիւն Հօր Յիսուս, տուր ինձ իմաստութիւն զբարիս խորհել և խօսել և գործել առաջի քո յամենայն ժամ. ի չար խորհրդոց ի բանից և ի գործոց փրկեա զիս. և ողորմեա։

Կամեցող բարեաց Տէր կամարար, մի՛ թողուր զիս ի կամս անձին իմոյ գնալ, այլ առաջնորդեա ինձ լինել միշտ ըստ կամաց քոց բարեսիրաց. և ողորմեա։

Արքայ երկնաւոր, տուր ինձ զարքայութիւն քո զոր խոստացար սիրելեաց քոց, և զօրացո զսիրտ իմ ատել զմեղս և սիրել զքեզ միայն, և առնել զկամս քո. և ողորմեա։

Digitized by Google

Խնամող արարածոց, պահեա նշանաւ խաչի քո զհոգի և զմարմին իմ ի պատրանաց մեղաց, ի փորձութեանց դիւաց և ի մարդկաց անիրաւաց, և յամենայն վտանգից հոգւոյ և մարմնոյ. և ողորմեա։

Պահապան ամենայնի Քրիստոս, աջ քո հովանի լիցի ի վերայ իմ ի տուէ և ի գիշերի՝ ի նստել ի տան և ի գնալ ի ճանապարհ, ի ննջել և ի յառնել, զի մի՛ երբեք տատանեցայց. և ողորմեա։

Աստուած իմ, որ բանաս զձեռն քո, և լնուս զամենայն արարածս ողորմութեամբ քով, քեզ յանձն առնեմ զանձն իմ. դու հոգա և պատրաստեա զպէտս հոգւոյ և մարմնոյ իմոյ յայսմ հետէ մինչև յաւիտեան. և ողորմեա։

Դարձուցիչ մոլորելոց, դարձո զիս ի չար սովորութեանց իմոց ի բարի սովորութիւն. և բևեռեա ի հոգի իմ զսոսկալի օր մահուն և զերկիւղ գեհենոյն և զսէր արքայութեան քոյ, զի զղջացայց ի մեղաց, և գործեցից զարդարութիւն. և ողորմեա։

Աղբիւր անմահութեան, աղբերացո ի սրտէ իմմէ արտասուս ապաշխարութեան որպէս պոռնկին, զի լուացից զմեղս անձին իմոյ յառաջ քան զելանելն իմ յաշխարհէս. և ողորմեա։

Պարգևիչ ողորմութեան, պարգևեա ինձ ուղղափառ հաւատով և բարի գործով, և սուրբ մարմնոյ և արեան քո հաղորդութեամբ գալ առ քեզ. և ողորմեա։

Բարերար Տէր, հրեշտակի բարւոյ յանձն արասցես զիս քաղցրութեամբ աւանդել զհոգի իմ, և անխռով անցուցանել ընդ չարութիւն այսոցն որ են ի ներքոյ երկնից. և ողորմեա։

Լոյս ճշմարիտ Քրիստոս, արժանաւորեա զհոգի իմ ուրախութեամբ տեսանել զլոյս փառաց քոց ի կոչման աւուրն, և հանգչել յուսով բարեաց յօթևանս արդարոց մինչև յօր մեծի գալստեան քո. և ողորմեա։

Դատաւոր արդար, յորժամ գաս փառօք Հօր դատել զկենդանիս և զմեռեալս, մի՛ մտաներ ի դատաստան ընդ ծառայիս քոյ, այլ փրկեա զիս ի յաւիտենական հրոյն, և լսելի արա ինձ զերանաւէտ կոչումն արդարոց յերկնից արքայութիւնդ. և ողորմեա.

Ամենողորմ Տէր, ողորմեա ամենայն հաւատացելոց ի քեզ, իմոց և օտարաց, ծանօթից և անծանօթից, կեն-

Digitized by Google

դանեաց և մեռելոց. շնորհեա և թշնամեաց իմոց և ա-
տելեաց զթողութիւն որ առ իս յանցանաց. և դարձո
զնոսա ի չարեացն՝ զոր ունին վասն իմ, զի ողորմութեան
քում արժանի եղիցին. և ողորմեա ։

Փառաւորեալ Տէր ընկալ զաղաչանս ծառայիս քո. և
կատարեա ի բարի զխնդրուածս իմ բարեխօսութեամբ
սուրբ Աստուածածնին և Յովհաննու Մկրտչին և սրբոյն
Ստեփանոսի Նախավկային և սրբոյն Գրիգորի մերոյ լու-
սաւորչին և սրբոց առաքելոց և մարգարէից և վարդա-
պետաց և մարտիրոսաց և սրբոց հայրապետաց և ճգնա-
ւորաց և կուսանաց և ամենայն սրբոց քոց երկնաւորաց և
երկրաւորաց ։ Եւ քեզ փառք և երկրպագութիւն անբա-
ժանելի սուրբ Երրորդութեանդ՝ յաւիտեանս յաւիտե-
նից. ամէն ։

МАՂԹԱՆՔ

Վասն սրբուհւոյ անարատ մօր քոյ և կուսի Տէր ընկալ
զաղաչանս մեր և կեցո զմեզ ։

ՔԱՐՈԶ

Սուրբ զԱստուածածինն և զամենայն սուրբս բարեխօս
արասցուք առ Հայր յերկինս. զի կամեցեալ ողորմեսցի,
և գթացեալ կեցուսցէ զարարածս իւր ։ Ամենակալ Տէր
Աստուած մեր, կեցո և ողորմեա ։

ԱՂՕԹՔ

Ընկալ Տէր զաղաչանս մեր բարեխօսութեամբ սուրբ
Աստուածածնին անարատ ծնողի միածնի Որդւոյ քոյ և ա-
ղաչանօք ամենայն սրբոց քոց (և որոց այսօր է յիշատակ)։
Լուր մեզ Տէր և ողորմեա, ներեա, քաւեա և թող ըզ-
մեղս մեր ։ Արժանաւորեա գոհութեամբ փառաւորել զքեզ
ընդ Որդւոյ և ընդ սրբոյ Հոգւոյդ, այժմ և միշտ ։
Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս ։ Հայր մեր որ ։

ՄԱՂԹԱՆՔ

Զհանգստեան զաղօթս և զաղաչանս ընկալ մարդասէր
Աստուած ի հաճոյս բարերար կամաց քոց ։ Եւ մեր մե-
ղաց և բազում յանցանացն թողութիւն շնորհեա ։ Եւ
քեզ փառք յաւիտեանս. ամէն ։

Digitized by Google

Փառք քեզ Տէր Աստուած մեր, որ պարգեւեցեր զօրս բարեաւ և խաղաղութեամբ անցուցանել։ Մարդասէր Աստուած, զառաջակայ գիշերս՝ որ ի վերայ մեր գալոց է՝ ի մեղաց փրկեա, ի չարեաց ազատեա, ի գործս բարիս առաջնորդեա։ Առաւօտու օրհնութեանց և փառաբանութեանցն արժանի արա զամենայն հաւատացեալս անուանդ քում սրբոյ, և պահեա ի խաղաղութեան։

Տէր Աստուած մեր, տուր զքո խաղաղութիւնդ ամենայն աշխարհի. բարձ զցասումն և զպատուհասն ի յարարածոց։ Ողորմեա հարց և եղբարց մերոց կենդանեաց և հանգուցելոց։ Ողորմեա եկեղեցի շինողաց, երախտաւորաց, պտղատուից, սպասաւորաց, և այնոցիկ՝ որք ընդ հովանեաւ սուրբ տաճարիս են հանգուցեալ։

Տէր Աստուած, օգնեա թագաւորաց քրիստոնէից, և իշխանացն բարեպաշտից, զօրաց և զաւակաց նոցին՝ պահելով ի խաղաղութեան։

Տէր Աստուած մեր, պահեա զառաջնորդս և զեղբայրութիւնս մեր ամբողջ և անխռով ի կամս ողորմութեան քոյ։

Նշանաւ սուրբ և պատուական խաչիւ քո հալածեա զերեւելի և զաներեւոյթ թշնամին ի սահմանաց մերոց և ի բնակութենէս մերմէ. փրկեա զմեզ ի հրոյն յաւիտենից։ Եւ քեզ փառք յաւիտեանս. ամէն։

Օրհնեալ եղերուք ի շնորհաց սուրբ Հոգւոյն. հանգերուք խաղաղութեամբ, և Տէր եղիցի ընդ ամենեսեանդ. ամէն։



## ԿԱՐԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ
# ՀԱՍԱՐԱԿԱՑ ԱՂՕԹԻՑ
### ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ ԵԿԵՂԵՑՒՈՅ

## ԿԱՆՈՆ
# ԱՒԱԳ ՕՐՀՆՈՒԹԵԱՆՑ
### ՅԱՐՈՒԹԵԱՆ ՏԵԱՌՆ ՄԵՐՈՅ
### ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ



## Ա Ձ

ԵՐԳԵՍՑՈՒՔ երգ նոր Աստուծոյ փրկչին մերոյ որ փրկեացն ի թշնամւոյն ծառայութենէ ըզմեզ. հըզօրն էր կարողութեամբ և ապրեցոյց փառաւորեալըն փառօք։ Գա յանձն առեր Աստուած ելանել ի խաչ վասըն մեր. Եւ ընդ նըմին բեւեռեալ ըզհընութիւն մեղաց մերոց. վասն որոյ երկըրպագեմք եւ գերօրհնեմք ըզքո զանճառ խոնարհութիւնդ։ Զոր ընտրեալ Աստուած յամենայն ազգաց երկրէ ծընանել ի նմանէ ապրեցուցանել ըզմեզ կռոցն ի պաշտելութենէ. որպէս զԱստուածածին միշտ փառաւորեսցուք։

ՆԱՅ. Նայեցայ Տէր ես. յամենազօր ի քո տընօրէնութիւնդ. Եւ երկիւղիւ փառաւորեցից ըզքեզ Քրիստոս։ Ի խաչելըն քո մեռուցեր ըզմահ և յաղբերէ կողի քո տեղերաց արբուցեր զանմահութիւնս։ Աստուածածին անարատ կոյս առ քեզ ապաւինիմք. բարեխօսեա առ Քրիստոս վասն անձանց մերոց։

ԶԻՀ. Հրով աստուածութեանդ քո Քրիստոս. այրեցեր ըզդրունըս դըժոխոց և լուծեր ըզմահ. և անմահութիւն պարգևեցեր ազգի մարդկան։ Ցայգուոյդ անմահութեան ճաշակեցաք և տեսաք զի քաղցր և ուղիղ ես Տէր. և վասն ամենեցուն փրկութեան եկիր յաշխարհ։ Սըրբուհւոյ Աստուածածնին բարեխօսութեամբ. պարգե-ւեա երկըրպագուացս ամենասուրբ Երրորդութեանդ. զյարութիւն յուսոյ կենացն յաւիտենից։

ԾԱՆ. Ծանեաք ըզքեզ Քրիստոս թագաւոր յաւիտենից. և տեսաք ըզքեզ իշխան մահու և կենաց || զի դու ես Տէր. և չիք այլ ոք բայց ի քէն։ Աջով քո բարձրելոյ առցես ըզվրէժս ի թըշնամւոյն. և նետըք քո սրեցեն զարիւն նորա զի դու։ Որ յարեար ի մեռելոց նորոգե-ցեր զազգըս մարդկան. սրբուհւոյն աղաչանօք հաստա-տեա զհիմունս եկեղեցւոյ սրբոյ քո զի դու։

ՀԱՍ. Համատարածութիւն իմ լեր Տէր որ յաղթող խաչիւ քո ըզդըժոխս աւերեցեր. քանզի յարեար երեքօրեայ զան-կեալըն կանգնեցեր զԱդամ։ Օգնեա փրկիչդ Աստուած պարծելոցս ի խաչ քո յուսողացս ի քեզ Տէր. և փրկեա միայն բարերար ի վըտանգէ զանձինըս մեր։ Միայն օր-հնեալդ ի կանայս մայր և միշտ կոյս և իմանալի լոյ-ծընօղ արարչին մերոյ անդադար բարեբանեսցուք։

ԳԻՇ. Ի գիշերաց կանխելով վերօրհնեմք ըզքեզ Քրիս-տոս Աստուած որ վասըն մեր խոնարհեցար.|| յանձն առեր զամենայն և խաչի համբերեցեր։ Լուսաւորեցաք ի հրա-մանաց քոց թագաւոր թագաւորաց Աստուած որ ըզմահու լուծեր զիշխանութիւն. յանձն։ Քերովբէական թևօք պարածածկեցար. սրբուհի Աստուածածին կոյս և մայր և բնակարան աստուածութեանն. վերօրհնեալ յամենայն առաքելական քարոզութեամ նըցն։

ԽՍԱ. Ցոյց եւ յարութիւն ազգի մարդկան Քրիստոս Աստուած զհիւանդութիւն հոգւոյ իմոյ կենդանացո. || որպէս երբեմն զնզդեմկիայն: Զչարչարանս եւ զգթած յանձն առեր կենդանատու ամենեցուն. զհիւանդութիւն հոգւոյ իմոյ առողջացո. որպէս: Առ քեզ ապաւինիմք. խորանդ եւ տաճար Աստուծոյ Բանին Մարիամ մայր եւ կոյս. բարեխօսեա առ Քրիստոս վասն անձանց մերոց:

ՕՐՀ. Զփառաւորեալըն յամենայն արարածոց. եւ ի ծագաց մինչ ի ծագս երկրի զերկրպագեալըն. զմարմնացեալ Բանն ի կուսէն || ձայնիւ երգով օրհնեսցուք: Որ դիմեալ գայ յԵդովմայ բարձրացեալ փողով. յարուցեալ ի պատերազմ ընկղմեաց զաներեւոյթն Ամաղէկ. զիջեալ Բանն ի դըժոխս ձայնիւ: Ծագումն ի Հօրէ փառակից սուրբ Հոգւոյն կենդանութիւն ազգի մարդկան որ յարեաւն այսօր ի մեռելոց. զհամբարձեալ Բանն ի յերկինս ձայնիւ:

ՆԵՂ. Որ լուար Աստուած զգոչմանըն Յովնանու յորովայնէ կիտին ապրեցո եւ զիս յաներեւոյթ թշնամւոյն փրկիչ զօրեղ. որ նըստիս ի քրովբէական յաթոռ: Որ ընտրեցեր քեզ վերընտիր քարոզօղ նինուէացւոցն զյափըշտակեալըն ի կիտէն երեքօրեայ իջմամբ ի դըժոխս. եւ զիս ըզբազմամեղս արձակեա ի կապանաց մահու ի կեանս յաւիտենից: Եկեալըդ ի փրկութիւն ըստեղծուածոց քոց պատկերակից եղեր հողեղէն մարդոյն ըզմեղըս սպաներ. եւ զմահու գերեալըն ազատեցեր ի մեղաց:

ՏՐԼ. Հիացան զօրք երկնից ընդ քո յանձն առնուլ ըզծառայի ըզկերպ. եւ մարգարէն զարհուրեալ ասէր. լուայ ըզլուր քո եւ երկեայ. նայեցայ ի գործըս քո եւ զարհուրեցայ: Քանզի դու որ յառաջ քան զյաւիտեանս Որդի

Հօր եւ Հոգւոյն փառակից. Եկեալ ի մէջ երկուց կենդա-
նեացն երեւեալ. բարձրացար ի խաչին առնելով զհեծե-
լութիւն փրկութեան || քանզի լուծեալ եղեն երկունք
մահու։ — Փառք Հօր։ Երեւեցար ի փրկութիւն ըստեղ-
ծուածոց քոց ոչ մեկնելով ի Հօրէ. յանձն առեր կամաւ
զխաչն և զթաղումն. եւ յարուցեալ ի մեռելոց իշխանու-
թեամբ քանզի։ — Այժմ և միշտ։ Աստուածածին ան-
հարսնացեալ սրբուհի ընդ քեզ աղաչեմք անդադար ձայ-
նիւ. որ զէակ Բանն Հօր ի քեզ կրեցեր եւ ծնար անճա-
ռապէս. առ նա միշտ բարեխօսեա վասն անձանց մերոց։

## ԱԿ

ԵՐԳԵՑԷՔ Տեառն երգ նոր և օրհնեցէք զանուն նո-
րա յաղթական օրհներգութեամբ. || զի նա փառօք է փա-
ռաւորեալ։ Որ սեամբ հրոյ եւ ամպոյ առաջնորդեաց
ժողովրդեանն Իսրայելի ի յանապատ. եւ ընկղմեաց
զփարաւովն զօրօքն իւրովք ի ծով կարմիր. Երգեցէք
Տեառն երգ նոր. զի։ Ընդ քեզ աղաչեմք հանապազ սուրբ
Աստուածածին. բարեխօսեա Քրիստոսի Աստուծոյ մերոյ
փրկել զմեզ ի փորձութենէ. եւ յամենայն վտան-
գից մերոց։

ՆԱՑ. Նայեցարուք ժողովուրդք ի սքանչելիս Աստուծոյ
մերոյ. ունկնդիր լերուք հաւատացեալք Քրիստոսի եւ
ի միտ առէք զարդարութիւն ճշմարտութեան. զի նա
է յոյս հաւատացելոց։ Էութիւն անեղ անբաժանելի
Բանն Աստուած. կամաւորութեամբ յանձն էառ զմահ
խաչի և թաղեցաւ ի նոր ի գերեզմանի. եւ յարու-
թեամբն իւրով շնորհեաց մեզ կենդանութիւն։ Ուրախ

Digitized by Google

լեր մայր անճառ լուսոյ Մարիամ սուրբ Աստուածածին. քանզի ի քեզ կրեցեր ըզհուր աստուածութեանըն լուսեղէն տաճար Աստուծոյ Բանին. առ նա միշտ բարեխօսեա վասն անձանց մերոց։

ՋԻՀ. Հուր բորբոքեցաւ ի զօրութենէ խաչի քո Քրիստոս. կիզելով ըզթըշնամին ի վերայ երկրի. որ հակառակէր ըստեղծուածոց ձեռաց քո։ Իջանելով քո ի դըժոխըս զերկրածին իշխանութեամբ յաղթեցեր մահու հըզօր զօրութեամբ. կենագործելով զըմբըռնեալսն առ ի նմանէ։ Ծընուցար տիեզերաց Աստուած և մարդ գոլով. մարմնացար ի սուրբ կուսէն ի փըրկութիւն ազգի մարդկան. միշտ փառաւորեալ յանմարմնոց զինուորութեանց։

ՇԱՆ. Ի սուրբ Երրորդութենէն ծանեաք որ յառաջ քան ըզյաւիտեանըս Բանն Աստուած ի հայրական ծոցոյ խոնարհեալ ի վասըն մեր. Եւ ոչ որ իցէ այլ Աստուած բայց ի նմանէ։ Որ բարձրացեալ բազկաւ ի վերայ խաչին. խորտակեաց զապըստամբ ըզթըշնամին իջանելով ի ստորին ազատութիւն շնորհեաց նըստելոցն ի խաւարի. Եւ ու։ Անարատ տաճար Աստուծոյ Բանին. որ ըզնախամօրն Եւայի զանէծսն բարձեր անճառելի ծընընդեամբն ի քէն. առ նա միշտ բարեխօսեա վասն անձանց մերոց։

ՀԱՍ. Սիրտ իմ հաստատեցաւ ի քեզ հաւատով Քրիստոս Աստուած. եւ բարձրացաւ յոյս իմ ի փառըս քո որ յանճառելի ծոցոյ Հօր խոնարհեցար ի վասըն մեր. եւ երեւեցար մարդ ճըշմարտապէս։ Որ զկենդանարար մարմին և զարիւնըդ քո բաշխեցեր քաղցելոց. եւ ի խաչին բացեր ըզկողահոս աղբիւրդ արբուցանելով տիեզերաց զանմահութիւն. ի ճաշակմանէ մահաբեր պըտղոյն։ Մայր Քրիստոսի եւ բնակարան Բանին Աստուծոյ. անհաստու-

Digitized by Google

թեան խորհրդոյն ըսպասաւորեցեր միջնորդ եղեր Աստուծոյ եւ մարդկան. առ նա միշտ բարեխօսեա վասն անձանց մերոց։

ԳԻՇ. Լոյս ճշմարիտ Քրիստոս Աստուած առ քեզ հոգի իմ առաւօտէ. ի յերկրի || երեւեցո ինձ զերեսըս քո։ Քոյով պատուականն խաչիւ Քրիստոս Աստուած. եւ հրաշափառ քո առաւօտու. յարութեամբդ երեւեցո։ Հոգւոյն ըզքեւ հովանացեալ միայն սրբուհի ծընար ըզԲանն Աստուած զանճառելոյ հօր ծընունդ. եւ յայտնեցաւ միութիւն Երրորդութեանն ։

ՆՍԱ. Աղաչեցի ըզբազումողորմն Աստուած. եւ լուաւ ձայնի խընդրուածոց իմոց զի նուաղեցան աչք իմ ի տեսանելոյ. || եւ լինէն փարատեցոյց զցաւս անձին իմոյ։ Զթագաւորն Քրիստոս բարեբանեցէք. որ ի յանձն էառ ըզմահ խաչի եւ խափանեաց ըզմահու թագաւորութիւնն. եւ լինէն։ Փութացիք յօգնութիւն սուրբ Աստուածածին. եւ աղաչեա զնա ի քէն ըզմարմնացեալ Բանն Աստուած. զի յաւուր եւ ի միւսանգամ գալըստեանն իւրոյ. պարգեւեսցէ մեզ ըզկեանսըն յաւիտենից։

ՕՐՀ. Աստուած երեւեցաւ մարմնով. ապրեցուցանել զազգս մարդկան կռոցն ի պաշտելութենէ. || Նըմա միայնոյ երգեսցուք։ Քրիստոս բեւեռեցաւ ի խաչին եւ ելոյծ ըզդատապարտութիւն Ադամայ նախաստեղծին. Նըմա։ Քրիստոս յարեաւ ի մեռելոց. եւ յարոյց ընդ իւր զԱդամ զանկեալն ի պատրանաց. Նըմա։

ՆԵՂ. Աստուած զքեզ փառաւորեմք. որ ի յերկնից խոնարհեցար. ծառայի առեր ըզկերպարան եւ ըզգերեալս ազատեցեր ի մեղաց։ Զմարգարէն ապրեցուցեր Տէր ի կիտէն որպէս մարդասէր. որ նըշանակէր ըզքո ի մե-

ներոյ զերեքօրեայ յարութիւնդ։ Զհայր փառաւորեսցուք. եւ Որդւոյ երկրպագեսցուք. եւ սուրբ զՀոգին հաւատացեալքս ամենեքեան օրհնեսցուք։

ՏՐՂ. Որ անքննելի ես յէութեան ընդ Հօր անբաժանելի Բանդ Աստուած. խոնարհեցար ի լրումն օրինաց եւ մարգարէից եւ ի մէջ երկուց կենդանեացն բարձրացեալ եղեր ի վերայ խաչին. զոր յառաջն երգեաց մարգարէն Ամբակում։ — Փառք Հօր։ Որ ի կառս քերովբէականս վերանստեալ հանգչէիր ընկալելոց Հօր եւ սուրբ Հոգւոյն. իջեցար ելանել ի կառս հողեղէնս եւ հեծելութեամբդ քո փրկեցեր զտիեզերս. վերականգնելով զանկումն Ադամայ։ — Այժմ և միշտ։ Որ առաքեցեր զերկնաւորս քո սուրբ զմարգարէսն. աւետարանել զկենարար տնօրէնութիւնդ քո ի սրբոյ կուսէն. եւ երեւեցար մարդ ճշմարտապէս։

ԲՁ

ՕՐՀՆԵՍՑՈՒՔ զՏէր որ օրհնեացն զԻսրայէլ. եւ փրկեաց զժողովուրդն ի ձեռաց փարաւոնի. ‖ աստուած ամենազօր սքանչելի փառօքն իւրովք։ Տէր խորտակէ զպատերազմունս Տէր է յոյժ անուն նորա. որ փրկեաց զամենեսեան ի ձեռաց նեղչաց իւրեանց. աստուած ամենազօր։ Բարեխօսեա վասն մեր Աստուածածին Մարիամ. որ ծնար զտէր Աստուած որ հովուէրն զԻսրայէլ. աստուած ամենազօր։

ՆՍՑ. Աստուած խօսեցաւ ի բարձանց լուարուք բնակիչք երկրի. որ եկն և փրկեաց զամենայն արարածս. զի զանուն Տեառն կարդացաք և տուաք օրհնութիւն ի բարձունս։ Նոր Իսրայէլ կոչեցաք ի Քրիստոս եղաք բա-

Digitized by Google

ծին Տեառն և ժամանակից Քրիստոսի. || զի զանունն Տեառն կարդասցուք և տուք օրհնութիւն ի բարձունս. ի վերջին կենդանութեան ճաշակեսցուք զի քաղցր է Տէր. Եւ յիւղ ուրախութեան օծաք հաւատով. զի ի քեզ եմք ապաւինեալ որ մայրդ ես և աղախին Քրիստոսի լեր բարեխօս վասն մեր. զի զանունն Տեառն կարդասցուք և ըզքեզ մեծարեալ պատուեսցուք:

ՁԻՀ. Աքանչելի հուր Աստուածութեան քո Տէր տարածեցաւ առ հասարակ ընդ տիեզերս. եւ հրրդեհեալ բոցակիզեաց ըզպատրանս նախաստեղծին. զի զամենեսեան վերակոչեաց ի մահուանէ յանմահութիւն: Ցայգալոյս անմահութեան ճաշակեցին սուրբ առաքեալքն եւ լցին ըզտիեզերս աւետեօք սուրբ յարութեանն. զի ընդ նոսին վայելեսցուք յանվախճան ուրախութիւնսն: Որ ըզհուրն Աստուածային յորովայնի քում ընկալար. եւ ծնար անճառապէս զկենագործօղն ամենեցուն. բարեխօս ըզքեզ ունիմք որ երանեալդ ես ի կանայս:

ԾԱՆ. Ծանեաք ըզքեզ Տէր էակից Հօր և Հոգւոյն. որ վասն մեր խոնարհեցար ի յերկնից. || ծանեաք ոչ այլ Աստուած բայց ի քէն: Ծանեաք ըզքեզ Քրիստոս որ ի խաչին բեւեռեցար. եւ հեղմամբ արեանդ քո փրկեցեր ըզտիեզերս. ծանեաք: Որ զԹագաւորն ամենեցուն յորովայնի քում կրեցեր. սրբուհի մայր եւ կոյս և աղախին Քրիստոսի. բարեխօսեա առ Տէր վասն մերոյ փրկութեան:

ՀԱՍ. Հաստատեցաւ սիրտ իմ ի Տէր և բարձրացաւ յոյս իմ ի փառս քո. որ նստիս ի քրովբէական յաթոռ. || Հաստատութիւն իմ լեր Տէր քով յարութեամբ: Որ զանարատ բազուկս քո տարածեցեր ի վերայ խաչին.

Digitized by Google

ժողովել ըզհեռացեալսն ամենակարող զօրութեամբդ. համա-ցեալս մեր և ապաւէն մայր Տեառն եւ կոյս սուրբ. որ հուր Աստուածութեանն ոչ բոցակիզեցար զքո սուրբ զորովայն. բարեխօսեա առ Տէր վասն մերոյ փրկութեան։

ԳԻՇ. Ի գիշերայս կանխեցից փառաւորել ըզԲանդ Աստուած որ վասն իմ խոնարհեցար ի յերկնից. || Արարեր զխաղաղութիւն ի յերկինս եւ ի յերկրի։ Տուող խաղաղութեան Քրիստոս որ զդատակնիքն մահու լուծեր ի վերայ սուրբ խաչին. եւ հաշտեցուցեր ըզհայր ընդ արարածս. Արարեր։ Փառաբանակից Հօր և սուրբ Հոգւոյն որ լուսափայլ յարութեամբդ քո կենագործեցեր զազգս մարդկան. տուր մեզ Տէր զքո զխաղաղութիւն։

ԽՍԱ. Զեզեկիային քեզ մաղթեմ հառաչմամբ սրտի իմոյ. որ վասն իմ խոնարհեցար ի յերկնից. || յոյս կենդանութեան և փրկութեան իմոյ Տէր։ Որ ի խաչին բարձեր ըզդատակնիք մահու տարածելով ըզբազուկս քո. ողորմեա և զիս ի կապանաց բանսարկուին. յոյս։ Որ յամենայն ազգաց երանեցար սրբուհի և կոյս Մարիամ. աղաչեա զայն ի քէն ըզմարմնացեալն Աստուած. ապրեցուցանել ըզմեզ ի սպառնալեաց գեհենոյն։

ՕՐՀ. Զենկեալն ի փրկութիւն մեզ ըզԲանն Աստուած. խորհրդով տնօրէնութեամբ ընդ նմին երգով օրհնեսցուք զանունն նորա զի ի բարձունս է փառաւորեալ յանմարմնոց։ Զխաչեցելոյն պատմեսցուք զքաջութիւն. որ գոչմամբ ձայնի ըզպատերազմն չարին վանեաց եւ մահուամբ ըզմահացեալսն կենագործեաց. զի իջելոցն ի դժոխս վերածեաց զհոգիսն։ Ուրախացան զօրք երկնից ի վերուստ. քանզի ցուցն անապական ի քէն հեղեալ ընդ միջնորդ կոյս և մայր Բանին տնտեսութեան

լուսածին ամպ. ծագելով ի մեզ զարդարութեան արեգական:

ՆԵՂ. Ի նեղութեան իմում աղաղակեցի առ տուողն կենդանութեան եւ լուսոյ ձայնի աղօթից իմոց. || Եւ եհան ըզկեանս իմ յանապականութենէ: Ցորժամ ընկլայ ես ի խորս անդընդոց ըմբռնեցայ ի ժանիս վիշապին եւ փրկեաց զիս փրկիչն աշխարհի. եւ եհան: Միայն օրհնեալ սրբուհիդ ի կանայս բեռնակիրն եւ աստուածամատ արարչին բարեխօսեա առ Տէր վասն անձանց մերոց. որ փրկեսցէ ըզմեզ ի պատահանելեաց գեհենոյն:

ՏՐՂ. Լուայ ըզքանչելի տնօրէնութեան քո ըզլուր. քանզի անճառ բանդ Աստուած մարմնացար ի կուսէն ըզ վերաբերեալ ըզբնութիւն Ադամայ. եւ զարմացայ ընդ քո ընդ անհաս մարդասիրութիւնդ: — Փառք Հօր: Մարգարէին ձայնեալ ըզքո քաղցրութիւնդ առէ ելեր դու ի կառս քո փրկութեան եւ խաչիւդ ջախջախեալ ըզգլուխ վիշապին. սուրբ յարութեամբդ ըզմեզ կենագործեցեր: — Այժմ եւ միշտ: Ուրախացիր սրբուհի եւ միշտ կոյս. քանզի որ ի քէն մարմնացաւ զդժոխս աւերեաց սուրբ եւ անհամեմատդ ի կանայս. բարեխօսեա առ Տէր վասն անձանց մերոց:

ԲԿ

ՓԱՐԱՒՈՎՆ հանդերձ կառօքն ընկղմեցաւ ի հատանեն ջուրցն. եւ որդիքն Իսրայէլի գնացին ընդ ցամաքն ի մէջ ծովուն: Յայնժամ հերձեաց Մովսէս խաչանիշ գաւազանաւն. պատառեցան անդունդք. եւ

ՀԱՅ. Հաստատութիւն իմ լեր Տէր եւ յոյս փրկութեան. որ զառաջինն Ադամն ազատեցեր ի մեղաց. ‖ Նորոգեա և զիս զապականեալս մեղօք: Որ յառնելն կացեր անպատրաստ կողին պատրանօք. եւ մերժեցեր մեզ ի կողմանէս աղբերէդ. Նորոգեա: Աստուածածին անարատ մայր Տեառն եւ կոյս Մարիամ. որ եղեր ընդունօղ Բանին Աստուծոյ բարեխօսեա առ Տէր վասն մերոյ փրկութեան:

ԳԻՇ. Ի գիշերաց կանխեալ վերորջնեալք զանճառ տնօրէնութեան քո խորհուրդ. որ վասն մեր խոնարհեցար ի յերկնից ‖ խաղաղացո ըզեկեղեցիս մեր միածին Մարդասէր: Որ բարձրացար ի խաչին յաղագս դատապարտութեանն Ադամայ. եւ բարձեր ըզփշաբեր անիծադրութիւն հեղմամբ արեամբ քո սրբոյ. խաղաղացո: Որ ի վեր քան ըզքերովբէսն երեւեցար Աստուածածին Մարիամ. տանելով յորովայնի զանիմանալի զբնութիւնն բարեխօսեա առ Տէր վասն մերոյ փրկութեան:

ԽՍԱ. Անմահ Թագաւոր. որ կամիս ըզկեանս ամենայն մարդկան որ կարդան առ քեզ. ‖ լուր աղաչանաց մերոց եւ նորոգեա հոգւով գիտութեան: Որ զառժամանակեայ ըզցաւսըն բարձեր ի մարմնոյն Եգեկնոյ. մշտընջենաւոր ցուցանելով նորա զհոգեւորական առողջութիւն. լուր: Անսխալական եւ բարեգութ. բարեխօսութեամբ սրբուհւոյ անարատ մօր քո եւ կուսի. լուր:

ՕՐՀ. Զաստուածածին ամենեցուն օրհնեն սրբասացաց բանականքն կենդանիք. ‖ յաղթականն երգով եւ մեք օրհնեսցուք զանունն նորա: Որ ի վերայ խաչին դատապարտեաց ըզբանսարկուին բռնութիւնն. յաղթականն: Անարատ տաճար անվայրափակ Բանին Աստուծոյ Մարիամ սուրբ կոյս. բարեխօսեա առ Տէր վասն մերոյ փրկութեան:

Digitized by Google

ՆԵՂ. Անապականութեան արգելեր եւ ի մահու կեանք. ըզքեզ ծանեան հրանիւթիցըն սեռքն եւ բանականն կենդանիք. որ զՑօղեան ի կրակէն կործեալ արտաք-սեցեր || զգովասանական ձայնիւ եղանակեմք քեզ զերգս օրհնութեան նորամարդացեալ Բանին Աստուծոյ։ Յան-դարթաբեր արմատ փայտին. մակադրեալ ըզքեզ անհըպելի հըպմամբ եւ սեւեռեալ բեւեռօք. եւ ի հրա-ցայտ կողէ քո. ի ձեռըն զինուոր տիգի հոսանելոս վըտա-կաց գործեցեր. գովասանական։ Իմանալի բանաւոր տախտակ. անտրամադրելի տառիցն մովսիսական օրինացն. որ զԱստուածն ամենեցուն խնկապէս մարմնով ի գիրկըս քո բարձեր Մարիամ. Ներբողական ձայնիւ եղանակեմք քեզ զերգս օրհնութեան. ամենօրհնեալդ ի կանանց։

ՏՐՂ. Անեղին եղեալ մարդ տեսեալ զարմանայր մար-գարէն. եւ հեղուսեալ բեւեռօք զմարմինն ի խաչին. Ներգործեալ ի մէջ երկուց կենդանեաց։ Պատմեսցեն երկինք ըզվայելչութիւն փառաց Քրիստոսի. եւ ընկալեալ լուսաձեւ տարերցն ըզշիթս արեան անեղին. եւ օրհնու-թեամբ խաչելոյն լըցան տիեզերք։ Ջրաւորեալ ոչ միայն ի վերայ բուսաբեր արմատոյն. այլ քրովբէական կառօքն ըստորբէջեալ ի դըժոխս. կենագործեաց հըզօրեղապէս զերանս արդարոցն։ — Փառք Հօր։ Աղաղակէր աստուա-ծային բարբառովըն Տէր Յիսուս ի խաչին. եւ ընդդէմ առեղաց կընքէր հրացեալ աստուածային սուրբ ձեռօքն. եւ բարկութեամբ զարթուցեալ ի վերայ խաւարասէր իշխանին։ — Այժմ եւ միշտ։ Տիրուհի անարատ մայր Տեառն եւ կոյս Մարիամ. քրովբէական աթոռ ըզքեզ տեսաք ի յերկրի. բարեխօսեա առ Տէր վասըն մերոյ փրկութեան։

Digitized by Google

## Գ. Ձ

ԾԳՆԱԿԱՆ ընդունելի. եղեւ իմ Տէր ինձ ի փըր-կութիւն. || սա՛ է իմ Աստուած եւ փառաւորեցից ըզնա։ Ի խաչին բեւեռեցար. եւ զդըժոխոցն եւ լոյծ զբըռնու-թիւն. սա։ Որ մահուամբն եղծ ըզմահ. եւ յարու-թեամբն զնախահօրըն լուծեալ ըզմեղս. սա։ Աստուածածին զքեզ եւ յոյս եւ ապաւէն խոստո-վանողացս ըզքեզ որդւոյ քո եւ Աստուծոյ բարեխօսեա կեցուցանել ըզմեզ։

ՆԱՑ. Նայեցարուք. երկինք եւ խօսեցայց եւ վերօրհ-նեցից զՔրիստոս փառաց Թագաւորն։ Փառըք քեզ. որ յարեար ի մեռելոց Քրիստոս պարգեւեցեր ըզ մեզ ըզ-կեանսըն յաւիտենից։ Բարեխօսեա. անդադար առ որ-դին քո եւ Աստուած ը մեր ծընող եւ աղախին Տեառն։

ՁԻՀ. Աստուածային հուր կենդանի զօրութեամբ սուրբ Հոգւոյն. այրեաց զդրունսն դժոխոց եւ զարգելեալսն ի նմա կորզեաց ի կեանս եւ պարգեւեաց մեզ կենդա-նութիւն։ Ցանմահական ի յայգւոյն ճաշակեցին սուրբ առաքեալքն. եւ ըզհրաբորբակ դառնութեան այրմանն. ընկալեալ Սողովմի ի յաւուրըն տօնորմանն։ Ի բարե-խօսութիւն փութացիր մեզ սուրբ Աստուածածին. առ ի փրկել ըզժողովուրդս ի մեղաց եւ յապականու-թենէ։

ԾԱՆ. Ի սուրբ Երրորդութենէն ծանեաք ըզՏէր մեր Յիսուս Քրիստոս. ըզԲանն Աստուած որ ի ծոցոյ Հօր յառաջ քան զյաւիտեանս Որդի. փառաւորեալ որ եկիր ի փրկել զարարածըս քո։ Անճառ տնօրէնութեամբ ի միշտ կուսէն. զանէծիցըն բարձեր ըզդատապարտու-թիւն. եւ կամաւոր խաչելութեամբ քո Տէր. կեանըս

Digitized by Google

չնորհեցեր անոխակալ փրկիչ. անուանեալ. վերորհնեմք և երկրպագեմք որ ուրախութիւնդ ես երկնի և երկրի Քրիստոս թագաւոր։ Ապաւինիմք ի քո բարեխօսութիւնդ Աստուածածին Մարիամ. մայր Տեառն եւ կոյս սուրբ հարսն երկնից և դուռն կենաց զոր մարգարէն ետես։

ՀԱԱ. Համատարածեցաւ սիրտ իմ ի Տէր եւ բարձրացաւ եղջիւր իմ յԱստուած իմ զի փառաւոր յարութեամբն իւրով մեռելոց ընդդէմ... ։ Ընդարձակեցաւ բերան իմ Տէր ի վերայ թշնամեաց իմոց. քանզի հարեր ընդպատերազմ քո հզօր զօրութեամբդ։ Որ տարար ընդ բանն Աստուած յարգանդի քում. եւ ծնար ընդ մարմնով ապրեցուցիչ Աստուածածին. բարեխօսեա կեցուցանել զմեզ։

ԳԻՇ. Հոգի իմ յամենայն ժամ զքեզ փառաւորէ. Տէր վասն զի լոյս են հրամանք քո ի վերայ երկրի։ Հոգի քո սուրբ եւ բարի. զէն ինձ Քրիստոս եղիցի յամենայն ժամ. ընդդէմ թշնամւոյն հակառակողին։ Հոգւոյն սրբոյ հովանացեալ զքեզ Աստուածածին մարմնացեալ Հօր համաձայնութեամբ. զՈրդին միածին մեզ ի փրկութիւն։

ԽՍԱ. Հառաչեցի զանլռելի ընդհեծութիւն առ բարեգութն Աստուած եւ լուաւ ինձ, ի լեռնէ սրբոյ իւրմէ. եւ եհան զընկեալս ի մ յապականութենէ։ Անմերձեաց ընդմանչու կարողութիւնն որ խառնեցաւ վասն մեր. եւ յարեաւ ի մեռելոց որպէս յամենայնի կարող. փրկելով զընկեալսն։ Աստուած է որ ծնաւ ի միշտ կուսէն ի փրկութիւն ազգի մարդկան. լուսաւորելով զատեգերս ի գիտութիւն ճշմարտութեան. եւ բարեբանեմք զնորա բարեգթութիւնն։ Զանմարմնոցն օրհնեսցուք զԱստուածածինն որ կոյս մնաց յետ ծննդեանն. եւ

տաճարաւ յորովայնի զանտանելին ամենեցուն. զհամաբնակիցըն Հօր եւ ամենասուրբ Հոգւոյն։

ՕՐՀ. Ցօրհնութիւն նոր օրհնեսցուք ըզՏէր. որ ի վերայ քերովբէիցըն հանգչի եւ ի զօրաց երկնաւորաց փառաբանի սրբասաց ձայնիւ։ Որ կամաւոր խաչելութեամբն իւրով. աւերեաց ըզզօրութիւն մահու. եւ երեքօրեայ յարութեամբն իւրով պարգեւեաց մեզ կենդանութիւն։ Բարեխօսութեամբ սուրբ Աստուածածնին. պահեսցէ զեկեղեցի իւր սուրբ. եւ ի միւսանգամ գալըստեան իւրում նորոգեսցէ ի փառս։

ՆԵՂ. Զհրաշալի խորհուրդ տնօրէնութեան քո Տէր. ցուցանելով մարգարէիւն. ի փոր կէտին լինել Յ զերիս տիւս եւ զերիս գիշերս պահելով ի խաղաղութեան։ Համագոյից հաստիչ գոլով խոնարհեցար յերկնից եւ խաչեցար կամաւ Հօր վասն մեր. թաղելով ի սիրտ երկրի զերիս։ Այլ մեք ձայնիւ վերնոց փառաւորեսցուք ըզքեզ Քրիստոս. որ համագոյդ ես Հօր եւ սուրբ Հոգւոյն. զի միաբանեսցես զեկեղեցի քո սուրբ պահելով ի խաղաղութեան։

ՏՐԼ. Տէր ըզլուր քո լուայ ես եւ զարհուրեալ դողացայ յոյժ. Նայեցայ ի գործըս քո եւ փառաւորեցից ըզքեզ Քրիստոս որպէս մարգարէն։ — Փառք Հօր։ Զի աղբիւրըն կենաց Քրիստոս անապական մարմնացաւ ի քէն կոյս. ըզմեղըս մեր բոցանկիզեալ շիջոյց. վասն որոյ ըզքեզ անդադար բարեբանեսցուք։ — Այժմ եւ միշտ։ Զի ի քէն ցընծութիւն ծընաւ տիեզերաց նախայաւիտեան Բանն. փառակից Հօր եւ սուրբ Հոգւոյն. ըզնա անդադար աղաչեա վասն անձանց մերոց։

## Գ.Կ

ԵՐԳԵՑԷՔ Տեառն երգ նոր ձայնիւ ցնծութեամբ. որ խոնարհեցաւ ի հայրական ծոցոյ փրկել զարարածս. օրհնութիւնք նմա յաղթական երգով: Որ բաժանեաց ըզծով անշխարհիկ խաչին խորհրդով. եւ ազատեաց յանճարին փարաւոնէ ըզնորս իսրայէլ. օրհնութիւնք: Աստուածածին սուրբ լուսոյ ամպ հովանաւոր. եւ բնակարան Բանին որ բանիւ հովուէր զիսրայէլ. բարեխօսեա նմա վասն անձանց մերոց:

ՆՈՅ. Նայեցարուք ժողովուրդք ի պանծալիս փրկութեան մերոյ. որ մարդասիրապէս Բանն ի Հօրէ որպէս ցօղ խոնարհեալ յերկիր. Տուք օրհնութիւն Տեառն Աստուծոյ մերոյ: Որ զանհնարին բազուկս իւր միածինն տարածեաց ի վերայ խաչին. եւ ըզգրաւեալ որդիսն Ադամայ ժողովեաց ընդ թեւօքն իւրովք. տուք: Զանապական կոյսն Մարիամ Աստուածածին խոստովանի սուրբ եկեղեցի. ստի տուաւ հացն անմահութեան եւ բաժակ մեզ ուրախարար. տուք օրհնութիւնք նմա հոգեւոր երգով:

ՁԻՀ. Որ ըզհուր աստուածութեան քո Քրիստոս. բորբոքեցեր ընդ տիեզերս ամենայն. բոցակիզեալ ըզբռնութիւն թշնամւոյն: Ի յայգւոյն անմահութեան Եդեմայ. ճաշակեցին դասք առաքելոցն. զբաժակ կենաց քոց Տէր եւ մեզ արբուցին: Զտաճար անապականն Բանին Հօր. բարեբանեն դասք հոգեղինացն. զոր վերինք եւ մեք ձայնակցելով երկնայնոցն:

ԾԱՆ. Որ յանըսկըզբնական Հօրէ ծնեալ նախ քան զյաւիտեանս Որդի. եւ ծանուցար մարգարէիւք Աստուած ընդ Հօր գոլով ըզքեզ օրհնեմք. զեկեալդ ի փըրկութիւն արարածոց քոց Տէր: Որ ի խաչին մարմնով պատարագեալ հեղեր զարիւն քո սուրբ. եւ ար-

Digitized by Google

բուցեր ըզնետ քո յարեան խարդախողին մերոյ ըզքեզ օրհնեմք · զենեալդ ի փրկութիւն արարածոց քոց Տէր ։ Որ ըզհուրն Աստուած ի քեզ կրեցեր մորենի անկիզելի · դառնա ճաշակ պըտղոյն քաղցրացուցիչ անճառելի քոյին ծնընդեամբդ ի քէն · հայցեմք մաղթեա փրկել ըզմեզ ի հրոյն յաւիտենից ։

ՀԱՍ · Համատամտեցան սիրտըք մեր առ քեզ փառաց Թագաւոր որ ի յերկնից խոնարհեալ իջեր փրկել զարարածս ։ Պահեա ըզմեզ նըշանաւ յաղթօղ խաչի քո Քրիստոս յոր բարձրացար կամաւ Հօր բարձեր զանէծս Ադամայ ։ Որ զնախամօրըն զյանցանս լուծեր ծնընդեամբ քո սուրբ կոյս · բարեխօսեա անդադար վասըն մերոյ փրկութեան ։

ԳԻՇ · Լոյսդ որ ընդ Հօր նախ քան զյաւիտեանս · եկիր լուսաւորել ըզխաւար մեղաց աշխարհի · ծագել ի սմա ըզլոյս հրամանի · առ քեզ հոգի իմ առաւօտէ ։ Կեանք ի կենաց և լոյս յարութեան · որ արարեր խաչիւ քո զխաղաղութիւն յերկինս և յերկրի · տուր մեզ Տէր զքո զխաղաղութիւնդ · որպէս սըրբոց քոց առաքելոց ։ Զմայրըդ լուսոյ Բանին Աստուծոյ · որ եղեր արեւելք արեգականն ի մեզ ծագողին · բարեխօս ունիմք փրկել ըզմեզ ի փորձութենէ ։

ԽՍԱ · Զեզեկիային քեզ մաղթեմ փրկիչ · որ կենարար բանիւ քո լուծեր զերկունըս մահու · փարատեա և զիմ զհիւանդութիւնս · յոյս կենդանութեան մեր կեցո ըզմեզ ։ Որ անմահաբար քո մեռելութեամբն · աւերելով ըզդըրունըս դըժոխոց մեռուցեր ըզմահ · կենագործեա և զիս զմեղօք ըզմեռեալս · յոյս ։ Մաքուր եւ անարատ կոյս յետ ծընընդեան · որ մարմնով ծընար զարձակօղն ի կապից մահու · բարեխօս լեր վասն անձանց մերոց · փըրկել ի սպառնալեաց գեհենոյն ։

Digitized by Google

ՕՐՀ. Զփառաւորեալն ի հրեշտակաց զամենասուրբ զերրորդութիւնն. օրհնեցէք. ի սրբութեան նորա գունդք հոգեղինաց. յօրհնութիւն ի նոր։ Զյաղթօղն ի մահու պատերազմի դիմեալ կամաւ ի մահ խաչին. գովեցէք որ էառ աւար բաշխեաց որդւոց մարդկան. բարձրացեալ փառօք։ Ուրախութիւն երկնի եւ երկրի ամեն թեթեւ ցօղեալ ի մեզ զարդարութիւն. բարեբանեսջիք ըզբըղխեալն ի քէն մարմնով յարմատոյն Յեսսեայ. զաւազանն ծաղկեալ։

ՆԵՂ. Ընդ Յովսեփու անձն իմ ծըփեալ յալիս մեղաց ծովու. աղաղակեմ ի նեղութեան իմում առ փրկօղդ եւ յոյս. լուր ձայնի իմում։ Որ փրկեցեր ըզմարգարէն յորովայնէ կէտին. ապրեցո եւ զիմ բռնեալս ի ժանեաց չար վիշապին. կենարար խաչիւդ։ Բարեխօսեա առ միածինն յարուցեալ ի մեռելոց. մայր Աստուծոյ. փրկել զանձինս մեր ի յաւիտենից ի հրոյն. աղաչեմք ըզքեզ։

ՏՐՂ. Որ յանքըննին ծոցոյ Հօր խոնարհեալ Որդի. երեւեցար ի մէջ երկուց կենդանեացն. զոր նախագուշակ տեսլեամբ ծանոյց մարգարէն։ — Փառք Հօր։ Որ յաթոռս հրակերպեանս բազմեալ ընդ Հօր. բարձրացար կամաւ ի կառս խաչին. եւ հեծելութեամբդ քո ազատեցեր ըզզերեալսն։ — Այժմ և միշտ։ Որ կուսական ծնընդեամբդ ի փրկութիւն յայտնեալ. եւ առաքեցեր զերիվարս քո քարոզս. աւետարանել ըզկենսաբեր յարութիւնդ։

ԴԶ

ՕՐՀՆԵՍՑՈՒՔ ըզՏէր եւ զյաղթօղ զօրութիւն նորա. փառօք երգեսցուք նմա զի փրկիչ և ապաւէն և

Digitized by Google

օգնական մեր է։ Սա է Աստուած մեր որ յաթոռ փա-
ռաց ընդ Հօր յերկրի երեւեալ տեսաք. սմա փառք
երգեսցուք զի փրկիչ և ապաւէն և օգնական մեր է։
Յաղթականն օրհներգութիւնքն որ ապրեցոյցն զիսրայէլ
ի ձեռաց փարաւոնի. Քրիստոսի փրկչին մերոյ || ա-
մենեքեան երգեսցուք զի փառաւորեալ է։ Որ մահու
խաչիւն իւրով կենդանացոյց զմահացեալսն եւ մարմնոյն
իւր բեւեռմամբ ըզկապանըս մահու ելոյծ. ամենեքեան։
Որ տաճար յորովայնի զանտանելին ամենեցուն եւ ծը-
նար անճառապէս. զՔրիստոս յոյս ազգի մարդկան. առ-
նամ միշտ բարեխօսեսւ կեցուցանել ըզմեզ։ Զկառս
փարաւոնի եւ ըզզօրութիւն նորա Տէր ընկէց ի ծով
կարմիր. այն որ հզօրն է կարողութեամբ նորա փա-
ռօք երգեսցուք զի փառաւորեալ է Տէր։

ՆԱՑ. Նայեցան զինուորութիւնք երկնայինք. յահա-
ւոր տնօրէնութեան քո խորհուրդ. եւ փառաւորեցին
զանպատում ըզքանչելիս քո մարդասիրութեանդ։ Բոցով
սրտմտութեամբ քո Քրիստոս. ի խաչին կիզեր ըզ-
բանսարկուին բռնութիւնն. եւ կենարար յարութեամբ
քո զեկեղեցի քո փրկեալ. փառս քեզ վերառաքեալ
ուսուցեր։ Տեսին դասք իմանալի զօրութեանց.
զԱստուածն մարմնով առ ի քէն ծնեալ. իսկ եկեղեցի
Որդւոյ քո Աստուածածին ըզքեզ խոստովանի. որ
միայն կուսութեամբ ես մայր։

ԶԻՀ. Աստուածային բարկութեամբ հրոյ քո Քրիստոս.
կիզեր ըզդըժոխս. եւ ըզստորինս արձակեցեր զըմբըռ-
նեալսն առ ի նմանէ. ըզքեզ օրհնեմք թագաւոր յաւի-
տենից։ Որ փոխանակ դառնութեան տընկոյն Եդեմայ.
ըզխաչ քո ետուր մեզ Քրիստոս և արբուցեր ի կողա-
հոսս աղբերէդ. զանըսպառ եւ զանվախճան ուրախու-

Digitized by Google

թեանն։ Աստուածածին ապաւէն մեր եւ յոյս. բարե֊
խօսեա առ Որդին քո միածին զի փրկեսցէ ըզմեզ ի
հրոյն տանջանաց. եւ պարգեւեսցէ մեզ ըզերկնից արքա֊
յութիւն։

ԾԱՆ. Տեսեալ ըզքեզ մահու լուծաւ. եւ դըժոխոց
տարեալ դըռղային. որ ըզմարդ մահու ծա֊
նուցեր մահ։ Որ հոգւովդ քով սըրբով. ծանուցար
քո արարածոցս. որ էինդ եւ եղեր մարդ. եւ էդ
Աստուած։ Հովանացեալ սուրբ հոգւոյն ի վերայ քո
սուրբ կուսի Մարիամու. որ ծընար մարմնով
ըզԲանն Աստուած։

ՀԱՕ. Աղեղն հըզօրաց նըւաղեցան. եւ որք ի նըւա֊
ղութեանն էին տկարքըն զգեցան զօրութիւն. վասն
այնորիկ հաստատեցաւ սիրտ իմ. և խորհուրդ իմ ի
Տեառնէ իմմէ։ Զէն ընդունելութեան Քրիստոս մեզ ըն֊
կալաք. սուրբ ըզխաչ քո նըշան անպարտելի զօրութիւն.
վասն այնորիկ հաստատեցաք մեք. ի յօրհնել ըզքեզ սուրբ
ըզչարչարանս։ Զդըրունս դըժոխոց պըղընձիս խորտա֊
կեցեր. Քրիստոս յորժամ յարեար ի մեռելոց հըզօր զօ֊
րութեամբ. վասն այնորիկ հաստատեցաք մեք. ի յօրհնել
ըզքեզ սուրբ ըզյարութիւնդ։

ԳԻՇ. Որ բանիւ հրամանի քո. հաստատեցեր զեր֊
կինս եւ զերկիր արարիչդ ամենայն եղանութեանց.
վասըն զի լոյս են հրամանըք քո ի վերայ երկրի։ Որ
ի ձեռըն փըրկական խաչի քո. լուսաւորեցեր սուրբ
զեկեղեցի. և նորոգեր պարիսպ ամրութեան հաւատացե֊
լոց. վասըն։ Որ եկիր ի կատարումըն կանխասաց մար֊
գարէից. յանձն առեր մարմնանալ ի սրբոյ կուսէն
մարդ ճըշմարտապէս. վասըն։

ԽՍԱ. Յոյս կենդանութեան և փրկութեան իմոյ. Տէր

Digitized by Google

Աստուած իմ. յիշեա զիս որպէս երբեմն զԵզեկիայն. եւ դարձո զհոգի իմ ի դրացս դժոխոց։ Որ կամաւոր մահուամբ քո մեռուցեր զմահ. Քրիստոս Աստուած և լուսափայլ յարութեամբ քո կենագործեցեր զաշխարհս. կենագործեա եւ զիս զմեղօք ընդմեռեալս։ Առ քեզ ապաւինիմք սուրբ Աստուածածին. բարեխօսեա անդադար առ Որդին քո և Աստուած մեր. փրկել զմեզ ի փորձութենէ և յամենայն վտանգից մերոց։

ՕՐՀ. Զանճառդ քո Քրիստոս փառաւորեմք զմարդանալդ. ի գլխոց լերանց հրատարակեմք զքո քաջութիւնդ. քանզի հարեր զպատերազմ || եկեալդ ի փրկութիւն մեզ։ Զյաղթութիւնդ քո Քրիստոս գովեմք զզօրութիւն. քանզի վանեցեր զընդդիմամարտ թշնամին եւ դարձուցեր զգերութիւն եկեալդ։ Բղխեաց երկիր զողորմութիւն. եւ նորոգեցաւ զօրհնութիւն. քանզի Աստուած ծննդեամբ ի միջոյ կուսէն ի փրկութիւն մեզ յայտնեցաւ. աւետեաց զդժոխս։

ՆԵՂ. Որ լուար Աստուած մարգարէին ձայնի գոչմանն. եւ ես նովին ձայնիւ գոչեմ || եւ զիս մի անտես առներ. այլ պահեա պատուական և սուրբ խաչիւ քո։ Որ քոյին հրամանաւդ զմահու լուծեր զիշխանութիւն. և անիծիցն եղեր քակտումն եւ զիս։ Որ իջեր ի յերկնից և մարմնացար ի սուրբ կուսէն. անճառելի քոյին ծննդեամբդ եւ զիս։

ՏՐԼ. Տէր զլոյս քո լուսոյ վերօրհնեալդ ի բազմաչեայս. եւ տեսաք զքեզ մարմնով ի վերայ խաչին ի մէջ երկուց կենդանեաց. զոր երգեաց Ամբակումն նախիմաց սուրբ Հոգւովն։ — Փառք Հօր։ Հեծելութիւնն քո Քրիստոս փրկութիւն եղեւ ազգաց. յելանելդ քո ի կառս զուարճացան արարածք. և օրհնութեամբ նոր

երգով լըցեան տիեզերք։ — Այժմ և միշտ։ Երևեցար ի փըրկութիւն նախահօրն Ադամայ. և առաջնեցեր զերիվարըս քո քարոզս աշխարհի. աւետաւոր յարութեանն որք ընդհանուր պատմէին ըզմիւսանգամ քո գալուստդ։

ԳԿ

ՅԱՂԹԱԿԱՆ քեզ օրհնութիւնք. Տէր որ ըզխորոց ծովուն հերձեր ըզջուրսն. զի ի նմա զըռնաւորին ջախջախեսցեր ըզգլուխ. ‖ և զարգելեալսն ի ձեռըն խաւարի քո վերածեր ի կեանս։ Կամաւոր մահուամբդ ի քէն Տէր արձակեցեր զհոգի զօրութեան. ի մէջ մահու ըզմահ աւերեալ վանեցեր և զարգելեալսն։ Միայնոյ քեզ ի կանայս կոյս յետ ծըննդեան երգեմք զօրհնութիւն. զի լոյս ի լուսոյ քեւ յայտնեցաւ աշխարհի և զնախամօրն եբարձ զանէծս. անճառ ծըննդեամբն ի քէն։

ՆԱՅ. Նայեցարուք ի բարբառ մարգարէին և ի պատգամըս կենդանիս. որ քարոզեաց մեզ ըզցօղըն կենաց ի յերկնից։ Զիջումըն քո Քրիստոս. գուշակեաց մեզ մարգարէն. և զկամաւոր չարչարանըս խաչին գոչէր ասելով. տարածեաց զթեւս իւր ընկալեալ ըզնա. և բարձեալ բերէ ի փըրկութիւն աշխարհի։ Քեզ միայնոյ մարմնացելոյդ ի սուրբ կուսէն. օրհնութիւն ի բարձունըս վերերգեմք ասելով. փառք քեզ Քրիստոս որ եկիր կամաւ Հօր կեցուցանել ըզմեզ։

ԶԻՀ. Ծափս հարէք ամենայն հեթանոսք և օրհնեցէք զԱստուած. զի հօրն Աստուած Բանըն մարմնացաւ ի կուսէն. աւերեաց ըզդըժոխս և զզօրութիւն մահու նորա։ Ընկալեալք ըզբաժակն ուրախութեան յայգւոյն յանմա-

Digitized by Google

հուԹեան. սրբոց առաքելոցն որք ընդ հանուր ընԹա-
ցն ընդ տիեզերս. լուսաւորեցին հրաւիրելով յերկնից
յարքայուԹիւնն։ Յաւուր վրիժուց հատուցման ամպա-
րըշտաց. վերածեցես ըզմեզ ընդ հոգեղինաց դասն ի
տեղի անկելոց հրեշտակաց. բարեխօսուԹեամբ սրբու-
հւոյ Աստուածածնին։

ՏԱՆ. Ծանեաք ըզքեզ Քրիստոս փառակից Հօր և Հո-
գւոյն. Նախապատմող մարգարէիցն ըզխոնարհելըդ քո
յերկնից. ‖ ծանեարուք և տեսէք զի պաշտելիս ամար
Տէր։ Յարուցելոյ մեզ փայլեաց արեգակն արդարու-
Թեան. էջխոնարհուԹեամբ բազմեալ տեսաք ըզնա ի կառս
խաչին. ծանեարուք։ Որում երկինք և երկիր ոչ բաւէին
տանել լուսոյն. բնակարան բնուԹեան բանին ըստա-
աւորեցար. աղաչեա վասըն մեր ըզմիածին քո զՈր-
դին։

ՀԱՍ. Համատեցան սիրտք մեր առ քեզ Քրիստոս
Աստուած. և ուրախացաք մեք ի փրկուԹեան քում
‖ ընկալ. զաղաչանս մեր միայն մարդասէր։ Որ
պատրաստեցեր քո իմաստուԹեամբդ ըզգիտուԹիւն յա-
րարածս. եւ ծանուցեր քո յարուԹեամբդ ըզյարուԹիւն
մեր ընկալ։ Խընդա Մարիամ. որ եղեր մայր Քրիս-
տոսի. և աղաչեա զառ ի քէն ըզմարմնացեալ Բանն Աս-
տուած. զի փրկեսցէ ըզմեզ ի փորձուԹենէ։

ԳԻՇ. Ի գիշերաց. կանխեալ առաղաղ կեմք լուր
մեզ Տէր. ‖ վասըն զի բայց ի քէն զայլ ոք ոչ գիտեմք
մարդասէր։ Տուր մեզ Տէր զքո զխաղաղուԹիւնդ.
և փրկեա ի ձեռաց անօրինաց խըստամաց ապըստամ-
բողաց. վասըն։ ԲարեխօսուԹեամբ. Ծընողի քո և
միշտ կուսի. հայցեմք ի քէն Քրիստոս փրկիչ աշխարհի.
վասըն։

Digitized by Google

ԽՄԱ. Ի վերանալ յինէն աւուրց իմոց Տէր. ծգնեա ինձ միայն մարդասէր։ Զչարչարանըս խաչի և մահու յանձն առեր Տէր. ծգնեա։ Բարեխօսութեամբ սուրբ Աստուածածնի եւ միշտ կուսի Տէր. ծգնեա։

ՕՐՀ. Ամենասուրբ Երրորդութեանդ երկրպագեն զօրք երկնայինք եւ ստեղծուածք անմարմին ձեռացդ. փառաւորեալ զարարչութիւնըդ քո հանապազ։ Ամենազօր խաչի քո Տէր երկրպագեսցուք. որով բարձեր զդատակնիք մահու քո արարածոց. փառաւորեալդ։ Ամենօրհնեալ Աստուածամայր Մարիամ. քերովբէական աթոռ արարչին մերոյ տնօրէնութեան. զոր երանեցին ամենայն ազգք հանապազ։

ՆԵՂ. Մարգարէն. ի փորոյ կէտին աղաղակէր եւ ասէր. Տէր. նայեա. եւ մի տար զիս հըզօրին այս։ Զայն բարձի ի խորոց անդնդոց առ Աստուած ողորմած. Եւ ձայն աղաղակի իմոյ հասցէ ի լսելիս քո Տէր։ Բարեխօսութեամբ սուրբ Աստուածածնի. եւ միշտ կուսի աղաչեմ. Տէր. փրկեա զիս ի յորոգայթէ յանհերեւոյթ թշնամւոյն։

ՏՐԼ. Լըսոյ ըզգարնչելի տնօրէնութեան քո ըզլուր. քանզի յերկնից խոնարհեալ մարմնացար ի սուրբ կուսէն և խաչեցար ընդ աւազակսն և զարհուրեալ հիացան ընդ քո ընդ անհաս մարդասիրութիւնդ։ — Փառք Հօր։ Զքրիստոնէաբար զպարութիւնըդ ցուցակեաց մեզ մարգարէն. ասէ եղեւ դու ի կանըս քո հեծելութիւնըդ քո Քրիստոս. փրկութիւն եղեւ յեղանելըդ քո։

— Այժմ և միշտ։ Երեւեցար ի փրկել զարարածս ի մահուանէ. եւ ըղձօրիք հիացեալ սատանեցան ի յահէ ամենազօրութեան փառաց քոց։

Digitized by Google

# ՀԱՄԲԱՐՁԻՔ

## ԿԻՐԱԿԷԻՑ ՑԱՐՈՒԹԵԱՆ

ԵՒ

## ՔԱՂՈՒԱԾՔ ՑՈՒԹՕՐԷՍ ՁԱՏԿԻ



### ԱՁ

Ա. Ընդ լուսանալ միաշաբաթին կանխեցին կանայքն ի գերեզմանն. ի խնկել զանապական մարմինն։ Եւ գտին զվէմն բարձեալ ի դրանց գերեզմանին. եւ լուեալ բարբառ ի հրեշտակէն. եթէ յարեաւ Քրիստոս և խափանեաց զմահ։ Եւ հանդիպեալ քո Տէր առաքելոցն. եւ տուեալ ողջոյն կենդանարար. առաքեցեր զնոսա ի փրկութիւն տիեզերաց։

Բ. Ի բարձանց ‖ Փառս տուք յարութեան քո Տէր։ Պատրանօք նախաստեղծին մերկացաք ի լուսոյն. իսկ յարութեամբ միածնին զգեցաք զանմահութիւն փառաց։ Խաբանօք փայտին ճաշակեցաք զմահ. իսկ ի փայտէն կենաց նորոգեցաք ամենեքեան փառօք։

Գ. Ընդ կանանցն իւղաբերսն առ քեզ առաւօտեմբք կենդանին յաւիտենից Քրիստոս ընկալ և զմերս. փոխանակ խնկոցն զօրհնաբանութիւնս։ Փոխանակ սուրբ աւետաւոր զուարթնոյն. զգթութիւն քո մեզ հանդիպեցի յուսով գիտութեան. մխիթարել զհոգիս եւ լուսաւորել։ Ընդ նոսին աւետարանութեամբ քաջ ըռ-ղեցուցաք. ըզքո միայն ըզքանչելիսդ. որ յարեար ի մեռելոց ամենազօր թագաւոր անմահ։

Դ. Որ անճառ էութեամբ Հօրդ ես փառակից. չարչարիլ մարմնով յանձն առեր վասն մեր. ‖ մշտընջենաւոր օրհնութեամբ ի հրեշտակաց օրհնեալ ես Տէր։ Որ էակից ես ընդ Հօր եւ սուրբ Հոգւոյն. խաչեցար եւ թաղեցար կամաւ Հօր վասն մեր. մշտընջենաւոր։ Որ միւսանգամ գալոց ես հայրենի փառօք. շնորհելով աստուածապէս յարութիւն տիեզերաց. յամենայն արարածոց յաւիտենից օրհնեալ ես Տէր։

Ե. Սոսկալի տեսիլ հրեշտակին. ի փառաւոր քո գերեզմանին. ըզպահապանսն զարհուրեցոյց։ Իմանալին մարմնական ձայնիւ. բարբառէր առ սուրբ կանայսն փարատեցոյց զսուգ եւ զտրտմութիւն։ Ով կանայք բղխօղք աստուածաբերք. զամենեցուն զյոյսն եւ զյարութիւն. ընդ մեռելոց զի՞ խնդրէք։

Զ. Փայլակնաձեւ հրեշտակն իջեալ յերկնից զարհուրեցոյց ըզպահապանսն. եւ սուրբ զկանայսն խնդութեամբ լցոյց։ Աստուածաբեր կանայք ցնծացէք այսօր յարութեամբ Քրիստոսի ի մեռելոց. եւ լոյս մեծ աշխարհի ծագեաց։ Աւետիս լուեալ ի սուրբ հրեշտակէն. ընթանային առ աշակերտսն պատմելով նոցա զյարութիւնն Տեառն։

## ԱԿ

Ա. ԱՌԱՔԵՑԱՐ ի Հօրէ Բանդ Աստուած ի փրկութիւն ազգի մարդկան ‖ օրհնեմք ըզքեզ սուրբ Աստուած։ Ի գերեզմանն իջեր թագաւոր անմահ. եւ ի Հօրէ ոչ մեկնեցար օրհնեմք։ Ի յերրորդ աւուր յարեար աստուածապէս եւ ի յերկինս համբարձար փառօք յարութեամբ քո Տէր օրհնեմք։

Digitized by Google

Բ. Յարուցեալ Տէրն ի գերեզմանէն. միածինն որ-
պէս փայլական եւ լոյս փառաց ծագեաց յաշխարհս. եւ
երկինք և երկիրըս ցնծային։ Մեծ է յարութիւն ա-
տուածորդւոյն. քանզի դրունք երկնից բացեալ եղեն և
հոտ անոյշ բուրեաց յաշխարհս. եւ լցոյց զարարածս
ամենայն։ Զօրք երկնից իջեալ էին եւ բանակեալ շուրջ
ըզգերեզմանաւն եւ հոգեղէն բարբառով երգէին. Տէր
օրհնեալ է քո յարութիւնդ։

Գ. Աքանչելի հրեշտակըն Տեառն. ցընծութեամբ ի-
ջեալ ի գերեզմանըն հարկանէր. փող յարութեանըն
Տեառն։ Ի հարկանել փողոյն. պահապանքըն զար-
հուրեցան եւ եղեն. ի յահէն որպէս մեռեալ։ Զայն
եղեւ ի հրեշտակէն. բարբառ եղեւ ուրախութեան Տէր
յարեաւ. փառք յարութեանըն Տեառն։ Դրաքըն
փակելովք. երեւեալ Յիսուս աշակերտացն եւ ա-
սէր. խաղաղութիւն ընդ ձեզ։

Դ. Հրաշալի ըզյարութիւն աստուածորդւոյն. այ-
սօր տեսեալ առաքելոցն եւ բազմութիւնըք հրեշտա-
կացն. || Երգէին երգ նոր անլռելի ձայնիւ։ Զայն
ահեղ գաբրիէլեան փողոյն. այսօր գոչէր աւետարա-
նէր աւետիք են աշխարհի. Երգէին։ Լոյս մեծ եւ
ահաւոր. այսօր ծագեաց սուրբ եկեղեցւոյ յարուցեալ
ի մեռելոց Քրիստոս. Երգեսցուք երգ նոր։

Ե. Երգեսցուք քեզ ընդ հրեշտակս յաղթական օրհ-
ներգութիւն։ Որ մահուամբ քո մեռուցեր ըզմահ. եւ
յարութիւն պարգեւեցեր հողանիւթ բնութեանս. Եր-
գեսցուք։ Որ ցուցեր մեզ ճանապարհ նորոգման եւ
մաքրեցեր զաղտեղութիւն յանցանացն զոր պատրեաց
թըշնամին. Երգեսցուք։

Digitized by Google

Ձ. Կանխեցին կանայք իւղաբերք. ի գերեզմանն եւ տեսին զպայծառութիւնն Տեառն: Բացաւ դուռն յարութեան. գերեզմանին կենդանի լոյս ծագեաց տիեզերաց:

ՀԳ. Որ յերկնային զօրս անմարմնոցն նախ հեղեր մատուցէս Հոգիդ ճշմարիտ. զաստուածային և զգերագոյն քո իմաստութիւնդ լինել փառաբանիչ սուրբ Երրորդութեանդ. ընդ նոսին փառաւորեմք զերրեակ միութիւնդ: Որ զկերպարանն աստուածային ստեղծեալ Երրորդութեանդ խորհրդականութեամբ. զարդարեցեր փչմամբ շնորհաց քոց կենդանարար. եւ ընդ ծնեալսն առ ի նմանէ խօսեցար օրինօք եւ մարգարէիւք. ընդ: Որ յերկրորդ լինելութեանս յետ յարութեան քում էակցին. մտեալ ի վերնատունն դրօքն փակելովք շնորհելով ըստ առաջին փչմանն ըզքեզ մետասանից առաքելոցն ասաց առէք Հոգի սուրբ. ընդ:

ՀՆ. Յորժամ յերկնից գոչէ փողն ազդեցութիւն առնելով տիեզերաց ի դատաստանն ահաւոր. յայնժամ աւուր յահեղին || յիշեա Տէր եւ ըզմեր ըզննջեցեալսն եւ հանգո ընդ սուրբսն քո: Յորժամ ճառագայթք աստուածութեանդ փայլեն ի յարեւելից. եւ զօրութիւնք հրաշիցեն բանին յայնժամ աւուր յահեղ. յիշեա: Զարհուրեալ դողան արարածք ի ձայնէ սոսկալագոյն փողոյն. յորժամ հարկանէ հրեշտակապետն եւ կոչէ ի դատաստանն զազգս որդւոց մարդկան. յայնժամ աւուր յահեղին յիշեա:

ՄՍ. Զանճառելի ըզլոյս աստուածութեանն տնօրինաբար կրեցեր ի քում յորովայնի Մարիամ մայր եւ կոյս. օրհնութեամբ ըզքեզ մեծացուցանեմք: Ի

մարմնաւոր լուսոյն զարհուրեցան դասք առաքելոցն. այլ ի քեզ բովանդակ կրեցեր ըղձուր աստուածութեանն Մարիամ մայր եւ կոյս. || օրհնութեամբ ըզքեզ մե-ծացուցանեմք: Առաքելոցըն հովանացեալ ամպ լուսե-ղէն. գերագոյն քեզ հոգւոյն սըրբոյ եւ զօրութիւն բարձրելոյն հովանաւորեալ սուրբ Աստուածածին. օրհ-նութեամբ:

ԻԶ. Որ ի սկըզբանէ իմաստութեամբ հաստատեցեր զեկեղեցի Հօր իմաստութիւն. զոր նախանըկար տեսու-թեամբ նըշանակեաց Մովսէս խորանաւն երկնահանգոյն ի Սինա լերինն. լուսաւորելով փառօքն Աստուծոյ: Որ ըզխորհուրդ անապական տնօրէնութեանըդ քո ի սըր-բոյ կուսէն. տըպաւորելով տապանակն աստուածային ուխտի կտակարանաց Բանիդ Աստուծոյ. փառաց անե-ղիդ տեղի հանգըստեան:— Փառք Հօր: Որ ի կեանըս վերադարձի բնութեանս դարձմամբն Յորդանանու օրի-նակեցեր. եւ ըզբըռնութիւն մահու եւ դըժոխոց կոր-ծանմամբն Երիքովի տապանակաւ խաչին հրաշագոր-ծեալ նոր Իսրայէլի. օրհնութիւն քեզ Տէր երգեսցեն մանկունք:

— Այժմ և միշտ: °Յարեաւ Տէրն ի մեռելոց. հըզօր զօրութեամբ հաստատեաց զհիմունս եկեղեցւոյ սըրբոյ:

## ԲԶ

Ա. Ի գերեզման քո կանխեցին կանայքն զիւղս և զխունկըս բերին. ի պատիւ թաղման քո. զի զմեղօք ըզհողացեալըս վերածեր ի կեանս: Փոխանակ իւղոյն զհաւատս անբիծս. եւ զաղաչանըս մեր ընդ առաւօ-

Digitized by Google

տեան կանանցն ընկալ. որք զողջոյն կենաց լուան ձայնի ունկամբն: Ետուն աւետիս առաքելոցն յարութեան յարուցչին մեր. աւերեաց ըզդըժոխս. եւ զթըշնամին կապեաց ի յանլոյծ կապանս:

Բ. Եկին ի գերեզմանն առաւօտեան սուրբ կանայքն. յօծանել խընկել զանապական մարմինն: Գոչմամբն հրեշտակին քաջալերէր ըզնոսա ասելով. ցընծացէք յարութեան որպէս յառաջն ասաց: Լուեալ ի հրեշտակէն զաւետիս յարութեանն. պատմէին աշակերտացն եթէ յարեաւ Քրիստոս:

Գ. Զայն աւետաւոր հրեշտակին զըւարճացոյց զառաւօտեան կանայսն. զՔրիստոսի պատմելով ըզյարութիւն: Մի յուսահատիք տխրութեամբ այլ ցընծացէք բերկրելով. խընկազգեացք աստուածայնոյն և փափագողք յարութեանն: Փութացարուք ի Գալիլեա աւետարանեցէք աշակերտացն. եթէ յարեաւ Քրիստոս եւ խափանեաց ըզմահ:

Դ. Այսօր զուարճացան տիեզերք ամենայն. ճըշմարիտ յարութեամբ աստուածորդւոյն. քանզի զդըժոխս աւերեաց եւ զերեաց զարգելեալս ի նմա: Այսօր լուսափայլեալ մեծապայծառ ծագմամբ հրեշտակապետն ի վերայ վիմին. կանանցն աւետէր ասելով. զի խընդրէք ըզկենդանին ընդ մեռեալս: Այսօր բերկրեցան կանայքն իւղաբերք. աւետեօք յարութեամբ աստուածորդւոյն. դարձան յառաքեալսն ասելով. յարեաւ Աստուած:

Ե. Սքանչելի կանայքն աներկիւղ եկին ի տեսանել ըզգերեզմանն. զի կատարեալ սէրըն մերժեաց զերկիւղն: Եկին ի խընկել ըզտէրունեան մարմինն. եւ

տեսին յարուցեալ ի գերեզմանէն. եւ վերբերին լոյսըն ծագեալ յաշխարհս։ Քարոզեալ հրեշտակըն զյարութիւնըն Տեառն. եւ բացան գերեզմանք նընջեցելոց. եւ յարութիւն Տեառն յաղթեալ մահու։

Զ. Կանխելով սուրբ կանանցն ընդ առաւօտն ի գերեզմանն. եւ զաւետիս յարութեան ըզձայն ի հրեշտակէն լըսեալ || եթէ յարեաւ Աստուած։ Թողեալ ըզտըրտմութիւն երջանիկ և սուրբ կանանցն. եւ խընդութեամբ ընթանային պատմել աշակերտացն եթէ։

ՀԳ. Նոյն եւ նըման Հօր եւ Որդւոյ Հոգիդ անեղ և համագոյ. բըղխումըն Հօր անքըննաբար առաք յՈրդւոյ անճառաբար. ի վերնատունն այսօր իջեր զՀոգիդ շնորհաց քոց արբուցեր. || Օրհնեա և մեզ ողորմութեամբ ի բաժակէդ իմաստութեան։ Էից ստեղծող արարածոց որ շըրջէիր ի վերայ ջրոց. նոյն և ի ջուրսն աւազանին ի շնորհել մեզ քում էակցին. գըգուեա սիրով աղաւնակերպ զմարդիկ ծնանիս աստուածակերպ. Օրհնեա։ Բաբուն վերնոցն իմանալեաց և ըստորին այսըր զգալեաց. որ մարգարէս տաս ի հովուաց և առաքեալս ի ձըկնորսաց. աւետաւոր ըզմաքսաւորս քարոզ բանի քում զհալածողս. Օրհնեա։

ՀՆ. Հրեշտակային ձայնիւն օրհնեսցուք զամենասուրբ զԵրրորդութիւնըն փառաւորելով ըզՀայր. որ վերակըչեաց || զամենեսեան ի մանկունէ յանմահութիւն։ Երգեցէք Տեառն երգ նոր եկեղեցիք սըրբեցելոց. Քրիստոսի երկըրպագելով. որ վերադարձեաց զամենեսեան։ Սըրբասաց ձայնիւն օրհնեսցուք հոգեւորական հընչմամբ զովեսցուք. սուրբ զՀոգին փառաւորելով. որ վերահանգոյց զամենեսեան։

Digitized by Google

ՄՏ. Ըզքէզ կոյս և մայր և բնակարան աստուա-
ծային ներմարդութեանն. գոհաբանեմք և վերօրհնեմք
զեղեալ փըրկող կենդանութեան ազգի մարդկան. ‖ վասն
որոյ ըզքեզ Աստուածածին և կոյս. բարեբանեմք ըզմայր
և զաղախին Փըրկչին մերոյ: Ծնունդըն Հօր և հինա-
ւուրց անժամանակն յաւիտենից. ժամանակաւ յորովայ-
նի քում բնակեցաւ և ի Հօրէ ոչ մեկնեցաւ. վասն որոյ:
Ծնեալն ի քէն ի խաչ ելեալ եւ ի յաթոռ փառաց
ընդ Հօր. անարգեալ ի մարդկանէ փառաւորութեամբ
էութեամբ երկրպագեալ. վասն որոյ: Ըզքեզ ոչ միայն
որդիք մարդկան այլ եւ վերին զօրութիւնք. դասք
անմարմնոց հոգեղինաց հրեղինաց զւարթնոց եւ հրեշ-
տակաց. գոհաբանեն և վերօրհնեն եւ փառաւորեն ըզ-
մայր և զաղախին Փըրկչին մերոյ:

ԽՁ. Ապաւինեցաք ի խաչ քո արարիչ յաւիտենից.
որ եղեր մեզ պահապան յաղթող ընդդէմ թըշնամւոյն.
| աղաչեմք սուրբ Փըրկիչ պահպանեա զանձինս մեր:
Բարձրեալ Թագաւոր որ վասն մեր ելեր ի խաչ. եւ
բարձեր սուրբ զյանցանս նախաստեղծին Ադամայ.
աղաչեմք: Գլուխ սուրբ հաւատոյ և փայտ կենաց մարդ-
կան յայտնեալ. զոր տեսեալ այսոյն պըղծոյ կործանե-
ցաւ անկանգնելի. աղաչեմք: Դողացաւ թըշնամին ընդ
յայտնել սըրբոյ խաչին. եւ ի յահէ փառաց նորա կոր-
ծանեցաւ յանդունդս երկրի. աղաչեմք: — Փառք Հօր:
Երկինք ցնծային և երկիր ուրախանայր. քանզի
Փըրկիչ ցուցաւ սուրբ խաչն և լուսաւոր տիեզերաց.
աղաչեմք:

— Այժմ և միշտ: Զքանչելի և զհրաշագործ ըզյա-
րութիւնըն Քրիստոսի. առաքելոցն ըստուգապէս տեսեալ
ընդհանուր քարոզէին եթէ յարեաւ Աստուած:

## ԲԿ

Ա. Քո յարութեանըդ. փառըք վայելէ երկայնա-միտ Տէր։ Օրհնեալ է քո յարութիւնդ Աստուած որ ըզմահ մահու ծանուցեր քոյին կամաւոր մահուամբն. քո յա։ Գոչումն ահեղ հրեշտակին ի վիմին որ քա-րոզէր առ սուրբ կանայսն յարեաւ Տէրն ի մեռելոց. քո յա։

Բ. Քրիստոս յարեաւ ի մեռելոց։ Ընդ արշալուսն առաւօտուն կանխեալ կանանցն ի գերեզմանն աւե-լով Քրիստոս յարեաւ։ Եւ առ նոսա ասէր հրեշտակն զի՞ խնդրէք ըզկենդանին ընդ մեռեալս Քրիստոս։ Փութացարուք ով սուրբ կանայք եւ պատմեցէք աշա-կերտացն աւետելով Քրիստոս։

Գ. Առաւօտեան սուրբ կանայքն հանդերձ իւղովք եւ խնկովք եկին ի սուրբ գերեզմանն. եւ ողբալով խնդրէին զանմահն || փառաց Թագաւորն։ Եւ ի ձայնէ հրեշտակին զուարճացան տրտմագգեացք ա-ռաւօտեան սուրբ կանայք զի՞ խնդրէք ըզկենդանին ընդ մեռեալս յարեաւ փառաց։ Աստուածասէր սուրբ կանայք փութացարուք հետեւեալ. պատմօղ լինել Պե-տրոսի եւ Յովհաննու սիրելոյ. յարեաւ փառաց։

Դ. Կանխեցին կանայքն. ընդ առաւօտուն ի գե-րեզմանն հանդերձ խնկովք։ Բերելով զիւղս անու-շունս. ի յօծումըն կենարար մարմնոյ Փրկչին մե-րոյ։ Եւ հրեշտակըն զօրութեամբ. գոչելով աղաղա-կէր յարեաւ Քրիստոս։

Ե. Ըզյայտնութիւն Քրիստոսի ամենեքեան օրհնես-ցուք. զի նա միայն Աստուած փառաւորեալ յաւիտեանս։

Digitized by Google

Ըզճառագայթ յարութեանն տեառն տեսանելով հրեշտակին. նա զօրանայր ի պատմել ըզկենսաբեր յարութիւնն։ Զայն աւետեաց լըսէին առաւօտեան սուրբ կանայքն. ի հրեշտակէն դառնային ուրախութեամբ յառաքեալսն։

Զ. Զտիեզերական խընդութեանցն աւետիքս. ե-րանելի կանանցն ուսեալք ի հրեշտակէն աներ-կիւղ խընդութեամբ և բերկրալից ուրախութեամբ ըն-թանային պատմել աշակերտացն աւետելով։ Զոր մահուն երկիւղիւ. ընդ մեռեալս համարեալ կարծէ-աք. նա ինքնիշխանութեամբ յարուցեալ զմահու եղծ զիշխանութիւն. և կենդանութիւն պարգեւեաց ազ-գի մարդկան։

ՀԳ. Այսօր երկնայինքն ուրախացան ընդ երկրաւո-րացս նորոգման. քանզի նորոգողն էից Հոգին էջ ի սուրբ վերնատանն. որով նորոգեցան դասք առաքե-լոցն։ Այսօր հողանիւթեայ բնութիւնս ցընծայ ընդ Հօր հաշտութեանն. քանզի որ եբարձ զՀոգին ի մարդկանէ ժամին եղելոց. դարձեալ վերըստին ըզնոյն պարգե-ւէ։ Այսօր մանկունք եկեղեցւոյ տօնեն ցընծութեամբ զգալուստ սուրբ Հոգւոյն. որով զարդարեցան ի զգես-տըս լուսափայլս եւ գերապայծառս. երգեն ընդ սրով-բէից զերեքսըրբեանն։

ՀՆ. Թագաւոր խաղաղութեան որ քաղցրութեամբ խնամես զքո զարարածս. յիշեա Տէր զհոգիս ննջ-ջեցելոցն ընդ սուրբըս քո եւ դասաւորեա ի յաւուրն յայտնութեան։ Որ կոչեցեր ի դրաց մահու ըզսիրե-լին քո զՂազարոս. եւ ծանուցեր զաստուածութիւնդ ընդհանուր տիեզերաց. լուսաւորեա Տէր։ Ի տա-ճարի քում սրբութեան մատուցանեմք քեզ պաղատանս արտասուալից. պայծառացո Տէր։

ՄՏ. Սիւն լուսոյ և ամպ հովանի սուրբ կոյս որ ցօղեցեր ի մեզ ըզցօղն երկնային. || զքեզ բարեբանեմք Աստուածածին կոյս։ Անկէզ մորենի եւ սրովբէ հողեղէն սուրբ կոյս. քանզի պտուղըն կենաց ի քէն տուաւ մեզ. զքեզ։ Անծիծից լուծիչ և քաւիչ մեղաց սուրբ կոյս. որ զանտանելին յէից ի գիրկըս քո բարձեր. զքեզ։

ԽՁ. Խաչըն կենարար. որ եղեւ ըմեզ փըրկութիւն. || սովաւ ամենեքեան ըզքեզ բարեբանեմք։ Որ ի Հօրէ լուսոյ լոյս ճառագայթեալ ի յերկրի եւ զաւազան զօրութեան հաւատացելոց. սովաւ։ — Փառք Հօր։ Որ լուսափայլ ծագմամբ հրաշափառապէս ըմեզ ցուցաւ ի յօգնութիւն ընդդէմ թըշնամւոյն. սովաւ։

— Այժմ և միշտ։ Այլ ի բաց եդեալ ըզհրեշտական երկիւղին ըզկարծիսն. նախաժամանեցին ի պատիւ այնորիկ. որ մանչուամբն եւ լոյծ ըզմահ եւ անմահութիւն պարգեւեաց ազգի մարդկան։

ԳՁ

Ա. ԻՒՂԱԲԵՐ եւ սուրբ կանայքն. ողբալով փութապէս եկին ի գերեզմանն քո Տէր. ի խընկել զանապական մարմինդ։ Բարբառ աւետաւոր հրեշտակին. որ գոչէր առ երջանիկ կանայսըն զի՞ խընդրէք ըզկենդանին ընդ մեռեալս. քանզի յարեաւ Տէր եւ աւերեաց ըզդըժոխս։ Պատմեալ երանելի կանանցըն զյարութիւն Տեառն աշակերտացն ուրախացեալք ընթանային. Պետրոս և Յովհաննէս ի կենատու գերեզմանն։

Բ. Այսօր յարութիւն Քրիստոսի. տօնեցէք հաւա-
տացեալք ի մի Աստուած հայր ամենակալ: Այսօր եւ
կանանցն իւղաբերիցն աւետիս տալով առաքելոցն. || Օր-
հնեն զԱստուած զհայր ամենակալ: Այսօր և հրեշ-
տակք ի յերկինս հոգեւոր հընչմամբ երգով. օրհնեն:

Գ. Ի խաչանիշ փայտէն դըղըրդեցան դժոխք. զօ-
րութեամբ սուրբ Հոգւոյն նորոգեցաւ երկիր. ով է սա
|| որ խափանեաց ըզմահ: Հրեշտակն աւետէր կուսին
Մարիամու. սա է ի սկըզբանէ Բանն որ յառաջ քան
զյաւիտեանս Որդին. սա է Թագաւորն որ: Յարեաւ
յաւուր երրորդի վէմք պատառեցան երկիր շարժեցաւ
տապանեցան դժոխք. սա է կենդանին յաւիտենից
Քրիստոս:

Դ. Փառաւորեալ է քո յարութիւնդ: Որ յա-
րեար ի մեռելոց յաւուր երրորդի. Քրիստոս
Որդի Աստուծոյ. փառք: Որ յահեղ բարբառոյ յա-
րութեան քո Տէր երկիր շարժեցաւ. վէմք պատառե-
ցան Քրիստոս Որդի Աստուծոյ. փառք:

Ե. Ի ձայն ահեղ յարութեան քո Տէր զարհուրեցան
զինուորացըն դապքն. յարփիափայլ հրեշտակին իջե-
մանն. եւ դողալով շարժեցաւ երկիր: Առաւօտեան
սուրբ կանանցն դիտելով ըզվիմափոր գերեզմանն.
բերելով զիւղս անոյշս ի յօծումըն կենարար մար-
մնոյն. անպարագիր էականութեանն: Եւ տեսեալ
ըզքերովբէն վերանըստեալ ի վիմին. տարփողելով սըր-
բուհեոյն. ասէ դարձիր ողջոյն տուր փողոցն. քան-
զի յարեաւ որ յառաջն ասաց:

Զ. Հրաշալի յարութիւնն ըզպահապանսըն զարհու-
րեցոյց. եւ հրեշտակն ի յերկնից իջեալ ի ձայն ահեղ

Digitized by Google

յարութեան աստուածորդւոյն. կանանցն աւետէր յարեաւ Աստուած։ Ի ձայնէ հրեշտակին զուարճացան տրտմազգեաց կանայքն. եւ դարձան խնդութեամբ ետուն աւետիս առաքելոցն եթէ յարեաւ նախապատմելին։

Հդ. Արեգակն արդարութեան Քրիստոս ծագեալ յաշխարհս հալածեաց ըզխաւարն անգիտութեան. եւ յետ մահու եւ յարութեան համբարձաւ առ Հայր յորմէ ծագեաց. որ երկրպագի յերկնաւորաց եւ յերկրաւորաց ընդ Հօր եւ սուրբ Հոգւոյն. ‖ վասն որոյ և մեք երկրպագանեմք Հօր Հոգւով եւ ճշմարտութեամբ։ Որ փոխանակ ծոցածին Բանին որ ել յերկինս. առաքեցաւ աւետիքըն Հօր ի բարձանց Հոգին ճշմարտութեան. մխիթարել զորս յԱդամայ տրտմեցելոց եւ հրազինել զընտրեալ դասս առաքելոցն. վասն։ Այսօր տրտմական և գիշերային լուծան երկունք ծննդեան նախամօրն. քանզի զծնեալսըն մարմնով ի մահ եւ յապականութիւն. վերըստին ծնանի Հոգին յորդիս լուսոյ Հօրն երկնաւորի. վասն։

Հն. Ի ձայն մեծի զուարթնոյն և ի հնչումըն հրաշալի փողոյն. ուր հողացեալ մարմինք մարդկան նորոգին. ‖ յայնժամ աւուր ահեղին յիշեա Տէր սուրբ և ըզմեր ըննջեցեալսն եւ հանգո ընդ սուրբըս քո։ Յորժամ նշան տէրունեան ճառագայթիւք փայլէ. և թագաւորըդ թագաւորաց փառօք տեսանի. յայնժամ։ Յորժամ ատեան դատաստանին դընի. և դըպրութիւնք հրաշիցըն բանին. յայնժամ։

ՄԾ. Լոյս լուսոյ մայր. եւ կենարար Բանին բնակարան. ‖ քեզ երանիցեն ազգ եւ ազինք ամենայն։ Ստեղծողին մայր. եւ հընութեան կերպի նո-

բոգոնմամղին. քեզ։ Լոյս ծագեցաւ ի քէն. նըստե-
լոցս ի խաւարամամրի. քեզ։

ԽԶ. Հրաշափառ տեսութիւն ի կաթուղիկէ եկեղե-
ցւոյ տեսանի. գործարան մահու մահուամբ առիթ զօղ
կենաց. եւ մահացուցիչ նախամատեղծին մահուամբ զօղ
շնորհող յարութեան։ Պարգեւ գերագոյն պարգեւի
այսօր հաւատացելոց. եւ մահացուն ի կենաց առնու
իւր զօրըն վերելեալս. եւ թռուցեալ վերագոյն բընա-
կել ի տեղւոյն սըրբութեան։ — Փառք Հօր։ Եկայք
ժողովուրդք ընդ հոգեղինացըն սպասաւորեսցուք. Եր-
կըրպագեսցուք աստուածային սուրբ նըշանիս. փառա-
ւորեսցուք ըզհրաշագործ պարգեւաց տըւողն։

— Այժմ և միշտ։ Եկայք լուսազգեցեալք. յօրհնութիւն
նոր օրհնեսցուք ըզՏէր. քանզի մարմինն որ ի մէնջն
էառ ի հրեշտակաց երկրպագութիւն առնու. ի սրով-
բէից և ի քրովբէից։

Է. Տուք ըզփառս ի բարձունս. թագաւորին յա-
փառենից. որ փըրկեաց զազգս որդւոց մարդկան ի
ծառայութենէ թըշնամւոյն. ‖ օրհնութիւն առաքողին
ի բարձունս։ Նա ինքնիշխանութեամբ բազմեցաւ ի
վերայ խաչին. կապեաց զիշխանըն մեղսամահէր. զմա-
հու գերեալըն յԱդամայ կենագործեաց ի կեանս ան-
մահ. օրհնութիւն։ Նախայաւիտեան Որդին փառա-
կից Հօր և սուրբ Հոգւոյն. դըներ ի նոր գերեզմանի.
Նոր նորոգել զմեզ ըզհընացեալըս մեղօք. օրհնութիւն։
Հրաթեւեան սերովբէն նըստելով ի վերայ վիմին.
Հարկանէր փող յարութեանըն Տեառն. պակուցեալ
պահապանացըն յահէն երեն որպէս մեռեալ. օրհն։
Հանգորդս արա եւ ըզմեզ Տէր. ընդ սըրբոց քոց ա-

Digitized by Google

ամբարձողն. որք արժանի եղեն տեսանել ըզքեզ ի յարութեան քո. արժանաւորեա Տէր մեր տեսանել ըզքեզ ի միւսանգամ քո գալըստեանն. օրհնութիւն առաքողին ի բարձունս:

## ԳԿ

Ա. ՅԱՐԵԱՒ Տէր մեր ի գերեզմանէն: Ընդ յառաջանել փրկչին մերոյ երկիր շարժեցաւ. վէմըք պատառեցան: Ճառագայթեալ լոյսն ի վերայ վիմին. զարհուրեցոյց ըզպահապանսն. անդրանիկն գերեզմանին:

Բ. Զատուածային ըզգերեզմանաւըն բոլորեալ դասըք հրեշտակաց տեսանէին ըզՏէրըն յարուցեալ ի գերեզմանէն: Աստուածածնէր կանայքն. եկին ի գերեզման փրկչին անոյշ իւղօք եւ խընկօք. յօժանելով զմարմինըն տէրունական: Լուսապայծառ հրեշտակն. նըստէր ի վերայ վիմին աւետարանէր կանանցն. յարեաւ սուրբ փրկիչըն տիեզերաց:

Գ. Ընդ քո յարութիւնդ օրհնեմըք մարդասէր. Աղաղակելով Տէր փառըք քեզ: Զոր օրհնեն սերովբէքն. եւ զովեն քերովբէքն. աղաղակելով: Անդադար բերանով. անհանգիստ բարբառով. աղաղակելով:

Դ. Առեալ եւ մեր զօրհնութիւնըս հրեշտակացն երգեսցուք եւ մեք փառս յարութեանն քո Տէր: Որ խաչեցար վասըն մեր թաղեցար եւ յարեար ազատեցեր ի մեղաց: Սուրբ Աստուած սուրբ եւ հզօր սուրբ անմահ թագաւոր:

Ե. Տեսիլ փայլակնաձեւ զուարթնոյն. ի վիմին հըն-

Digitized by Google

ճեցեալ առ խընկաբերեանց կանանցն . փառաւորեցոյց զերկիւղալից տրտմութիւնն ։ Պահապանքն պակու-ցեալ ահաբեկ լինէին . եւ կանանցն աւետարանեալ . մահ մահուամբ յաղթեաց և ծանուցաւ մահ ։ Քարոզս ա-ռաքելով առ եղբարսն առաքելոյն . փութացարուք ի Գալիլեա . եւ տեսանիցէք զկենագործողն ըզՔրիստոս ։

Զ. Յանճառ փառաց խոնարհեցար և ըզգեցար ըզ-հողեղէն բընութիւնս . վերացար զանկեալսն ի գլորմանէ յանմահականն ի կեանս . ‖ ըզքեզ օրհնեմք անապա-կան ը Բանդ Աստուած ։ Անպարտականդ մա-հու դատապարտեալ ի վերայ խաչին . որ փոխանակ դառնութեան պտղոյն արբուցեր մեզ ի տեգախոց կողէդ . ըզքեզ ։

ՀԳ. Զանըսկըզբնաբար բղխումն ի Հօրէ * զՀոգին ճըշմարիտ . որ հընչմամբ ձայնի էջ ի վերնատունն այ-սօր նըման սաստիկ հողմոյ . ‖ զոր փառաւորեմք հոգե-ւոր երգով ։ Զհամագոյակիցըն Հօր եւ Որդւոյ զբաշ-խողըն շնորհաց . որ ի հրեղէն լեզուս բաժանեալ զբանն ընտրութեան լեզուաց շնորհեաց սուրբ առաքե-լոցն . զոր ։ Զաղբիւրն իմաստութեան ըզկատարեալն անձնաւորութեամբ . որ խօսեցաւ յօրէնս և ի մարգարէս եւ յաւետարանս . զոր ։

ՀՆ. Փառըք քեզ Աստուած փառաւորեալ յաւիտեան . որ կենարարդ ես մարմնոց եւ գոյացուցիչ հոգւոց մեր ննջեցելոցն ։ Որ բարձրացար ի խաչին վասն Ադա-մայ նորոգման . եւ իջանելով քո ի դժոխս աւար ա-ռեր ըզգերեալսն ։ Ըզգինս արեան քո յիշեա կենա-

* Իմա Օա և յՈրդւոյ, որպէս և այլուր:

գործոց աշխարհի. եւ հանգըստեան արժանաւորեա յերուսաղէմըն վերին:

ՄԾ. Աստուածածին խորան լուսոյ. անվայրափակ արփւոյն կենաց որ եղեր արեւելք արեգականն արդարութեան. եւ նըստելոցս ի խաւարի լոյս ծագեցեր. ‖ վասն որոյ ամենեքեան ըզքեզ միշտ մեծացուցանեմք: Անապական տաճար. եւ մորենի անկիզելի որ զանշէջ հուր աստուածութեանն ի քեզ տարեալ կրեցեր. որով բնութեանս կիզեալ չիջաւ կրից բոց. վասն: Կենդանի տապանակ. կտակարանաց նորոյ ուխտի որով ելք յերկիր աւետեաց հորդեալ. Հոգւով ի քեզ տըպաւորեալ Բանին. վասն:

ԽՁ. Ով քաւութեան լուսածին գերապանծ նիշ կամուցող կենացն ամենից. միշտ բազկատարած առ քեզ էն: Բազմաշխուռ ազանց հովանի եւ պահապան ի յել եւ ի մուտս. փըրկութիւն ի յայսոց եւ պարիսպ ամրութեան: — Փառք Հօր: Դրոշմ ըզգայութեան եւ կնիք ի դէմս ամենից. դու եւ յաստուածայինսըն կատարիս խորհուրդ. յորմէ արեգակնային փայլեն ճառագայթք:

— Այժմ եւ միշտ: Առաքեցար ի դըժոխս ցուցանելով ըզզօրութիւն աստուածութեանդ. ջաղջախեցեր ըզգլուխ խարդախողին խափանեցեր ըզզօրութիւն մահու. ըզքեզ օրհնեմք անապական ը Բանդ Աստուած:

## ԴՁ

Ա. ՓԱՌԱԲԱՆԱԿԻՑ Հօր Որդի. որ վասըն մեր խաչեցար զդըժոխս աւերեալ յարեար յաւուր երրորդի. ‖ փառք յարութեան քո Տէր: Հրեշտակապետին

ի քնումն. որ ըզպահապանսն երկիւղիւ զարհուրեցոյց առ դրանդն գերեզմանին. փառք։ Եւ սքանչելի սուրբ կանանցն. աւետարանէր ասելով յարեաւ Քրիստոս յարուցիչն մեռելոց. փառք։

Բ. Կանանցն կանխելով ի թաղումն կենդանւոյն տեառն ըզվէմն ի դրանցն ի բաց մերժեալ։ Թափուր զգերեզմանն. եւ ունայն տեսանէին. եւ տրտմութեամբ լային յուսահատեալք։ Մայր խաչեցելոյն. մի լար յուսահատեալ. քանզի Քրիստոս փառօք մեծաւ յարեաւ։

Գ. Ահագին ձայնիւդ քո Քրիստոս. ի վերայ խաչին դողացուցեր զարարածս ամենայն. զերկնային եւ զերկրաւոր բնութիւնս։ Ահագին երեւումն հրեշտակին. զարհուրեցոյց ըզկանայսն ասելով. զի խնդրէք ըզկենդանին ընդ մեռեալս։ Եւ յահէ զօրութեան աստուածորդւոյն զարհուրեցան կարապետք դժոխոցն ասելով. համբարձէք իշխանք ըզդրունս ձեր ի վեր։

Դ. Որ ի վերդ ես քան ըզմիտս և զխորհուրդս. համագոյականն եղելոցս արարող. ի Հօրէ առաքեցար վասն մեր եւ մարմնացար ի սուրբ ի կուսէն։ Անքննին ի յէութեան Աստուած. տնօրինեցար յարգանդի կուսին. ամպրեցուցանել զնախաստեղծին ծնունդն. և վերստին նորոգել ի փառս։ Ոչ չատանցար մարդ եղանել Աստուած. այլ եւ խաչի համբերեալ ըզթաղումն յանձն առեր զերեքօրեայ. և յարուցեալ նորոգեցեր զաշխարհս։

Ե. Զյարութիւն աստուածորդւոյն. հրեշտակապետն այսօր աւետէր կանանցն ասելով. յարուցեալ է Տէրն ի գերեզմանէն։ Ընթացեալ կանանցն խնդ֊

Digitized by Google

դուլթեամբ. պատմէին աշակերտացն ասելով. յարու-
ցեալ է Տէրն ի գերեզմանէն։ Վասն որոյ եւ մեք
ընդ հրեշտակին գոչեսցուք զյարութիւնն Քրիստոսի.
որ փրկեացն զմեզ ի ձեռաց մահու։

Ջ. Փառաւորեալ անճառելի յարութիւնն Քրիստո-
սի։ Որ կամաւ Հօր և Հոգւոյն ի վերայ քառաթեւին
պատարագեալ գառն Աստուծոյ. փառաւորեալ։

ՀԳ. Առաքելոյ աղաւնոյ. իջանելով մեծաձայն հնչ-
մամբ ի բարձանց. ի նմանութիւն լուսոյ փայլման
հրաշինեաց անկիզելի զաշակերտսն. մինչդեռ նըս-
տէին ի սուրբ վերնատանն։ Անհետական աղաւնի.
անքննելի որ քննէ զխորս Աստուծոյ. զոր առեալ ի
Հօրէ պատմէ զահաւոր և զմիասնական զալուստն.
զոր քարոզեցին համազգյական։ Օրհնութիւն ի բար-
ձունս. ելողին ի Հօրէ Հոգւոյն սրբոյ. որով առա-
քեալքն սրբեցան անմահական բաժակաւն. եւ
հրաւիրեցին զերկիրս ի յերկինս։

ՀՆ. Ժամանակ դարձի իմոյ եհաս ի յերկիր ‖ մարդ.
Տէր ընկալ զծառայս քո. եւ Հոգի քո բարի առաջ-
նորդեսցէ ինձ ի յերկիր ուղիղ։ Խոստովանող հոգիս
որ ելից զունայնութեան ընթացս աշխարհի. մարդ։ Ի
վերջնումս աւուր մեծի յորժամ առնես այցելութիւն
քոյոց սիրողաց յայնժամ խնայեա ի ծառայս քո. եւ
Հոգի։

ՄԾ. Աստուածածին մայր լուսոյ սուրբ կոյս լուսե-
ղէն տաճար. որում Երկինքը չէին բաւական. սու ի
բնակութիւն ի քէն մարմնացաւ։ Ընդ քեզ անհամբերա-
ցեալ որ միայնդ ի կանայս օրհնեալ. կրելով ի քեզ
զանտանելի զբնութիւնն. օրհնութեամբ մեծացուցա-
նեմք։ Ուրախ լեր աթոռ փրկութեան յոյս հաստա-

Digitized by Google

տութեան մարդկան. միջնորդ օրինաց և շնորհաց. որհ-նութեամբ անդադար գոհութեամբ մեծացուցանեմք:

ԽԶ. Ի Թաբօր ի լերին ձեւացուցեր ըզքո բնութիւնդ անստանելի գոյացութեամբ || ընդ որս և մեք ցընծութեամբ երգեմըք քեզ ողորմեա մեզ մարդասէր: Աշակերտըք հիացեալ. բարբառէին ըզխորհուրդս ի տագնապեալ սըրտից լուրեանց ընդ: Սքանչելի մեծ խորհուրդ զերրորդութեանըդ քոց սըրբոց առաքելոցըն ծանուցեր բարբառով. ընդ: Սոսկալի հիացմամբ զայլակերպութիւն քո Տէր. առաքելոցըն տեսեալ յօրինէին քեզ տաղաւար. ընդ: — Փառք Հօր: Հովանացեալ ամպ լուսեղէն. և ըզհայրականըն լուեալ ըզձայն եթէ դա է Որդի իմ սիրելի. ընդ:

— Այժմ և միշտ: Քրիստոս անմահ թագաւորն հետազօտեալ ի դըժոխս. կապեաց զիշխանըն մեղսասէր զմահու գերեալսըն յԱդամայ կենագործեաց ի կեանս անմահ. փառաւորեալ:

Է. Զանճառելի յարութիւնըն հրաշացեալ հրեշտակըն գուշէր առ կանանցն ասելով. յարուցեալ է Տէրն ի գերեզմանէն: Որ էակից ես ընդ Հօր զահանուր յարութիւն քո ի գերեզմանէն. սըրբասնեալ կանայքըն խընդութեամբ քարոզէին: Յարեաւ Տէրն ի մեռելոց. և ըզզօրութիւնըս դըժոխոց խորտակեաց և զարգելեալսն ի նմա կորզեաց ըսքանչելի յարութեամբ իւրով:

ԴԿ

Ա. ՅՈՐԺԱՄ եկին ի գերեզմանն. իւղաբեր կանայքն և բերին ըզխունկսն ի խընկել. զանապականն

մարմնովն։ Ցայնժամ հրեշտակն աւետարանէր. յա-
րեաւ Քրիստոս պատմեցէք աշակերտացն զյարութիւնըն
Տեառն։ Իսկ նոցա զարհուրեալ վասն ահագին տեսա-
լեանն. պատմէին աշակերտացն զահագին տեսիլն։

Բ. Էջ հրեշտակն յերկնից աւետաւոր երջանիկ եւ
սուրբ կանանցըն քարոզէր ասելով. || Եւ ձեզ ասեմ զվերըն-
տին լոյսըն ծագեալ ի յաշխարհ։ Այսօր տեսին ահե-
ղակերպ հրեշտակապետին մերձեալ ի գունդ զինուո-
րացն. այսօր սըրտաբեկեալ պահապանացըն զարհուրեալ
մեռանէին. եւ։ Այսօր ցընծայ Երուսաղէմըն վերին.
այսօր ցընծայ Սիոն մայր եկեղեցի քանզի Փրկիչըն
մեր յարեաւ և աւերեաց ըզդըժոխս. եւ մեզ ասեմ զվերըն-
տին լոյսըն ծագեալ ի Հօրէ։

Գ. Հրեշտակացըն դասքն. յերկնից ի յերկիր վայ-
րաբերեալ ի սպաս Որդւոյն Աստուծոյ։ Հրեշտակին
ձայնիւ. ցընծայր կոյսըն սուրբ և ընթացեալ առ աշա-
կերտսըն պատմէր։ Կենդանին յարեաւ. զերկունըս
մահու ելոյծ և կեանըս պարգեւեաց աշխարհի։

Դ. Հրեշտակ քո Տէր որ զյարութիւնըն քարոզեաց։
Զպահապանսըն զարհուրեցոյց զկանանցըն լուսաւորեաց
ասելով։ Զի խընդրէք ըզկենդանին ընդ մեռեալս. չէ
աստ այլ յարեաւ։

Ե. Փառք յարութեան քո Տէր։ Խաչիլ ի յանձն
առեր զը[illegible]թան. եւ ըզմահ ճաշակեցեր. զամենեսեան
յարուցեր զհաւատացեալսն ի քեզ որք || աղաղակէին
ասելով. փառք։ Վէմըք պատառեցան ի խաչելու-
թեան քո Տէր. եւ գերեզմանք բացան. դըժոխք
զարհուրեցան և մեռեալքըն յարուցեալ աղաղակէին։

Զ. Յարուցեալ է Տէրն ի գերեզմանէն ահեղակերպ
փայլմամբ. պատառեցան վէմք. եւ երկիր սա-

սանեցաւ ի յահեղ բարբառոյ մեծ կայսրապետին: Էջ հրեշտակն ի յերկնից ի գերեզմանն Տեառն. հընչեցուցանէր. ըզձայն ահեղ գոչման փողոյն ի վերայ գերեզմանին: Իսկ եկեալ սուրբ կանանցն ի խընկել զմարմինն Տեառն. եւ լուեալ ի հրեշտակէն. եթէ յարեաւ ի մեռելոց կենդանին յաւիտենից:

Է. Փառք Քրիստոսի ամենազօր յարութեանն: Քրիստոսի ամենազօր յարութեանն երկրպագեն քերովբէքն. եւ վեցթեւեանն սերովբէքն հոգեւորական հընչմամբ երգեն ասելով. փառք: Այսօր անուշահոտ բուրմամբ ընթանային սուրբ կանայքն. տեսանելով ըզհրեշտակն արեգակնակերպ փայլմամբ ի վերայ վիմին գոչէր ասելով. փառք: Այսօր արձակեցաք ի կապանաց նախահօրն. եւ վերըստին նորոգմամբ յաւիտենական կենացն եղաք ժառանգորդք. փառք:

Ը. Իւղաբերից կանանցն եկեալ. ի սուրբ գերեզմանն. եւ զահաւոր ըզհրեշտակապետին ըզձայնըն լուեալ. ‖ ում ըզ զխաչեալըն խընդրէք. յարեաւ Քրիստոս. անըմահ թագաւորն: Արփիահրաշ լոյս մեծ ծագեալ. ի սուրբ գերեզմանն. եւ զարհուրեալ պահապանացն երկիւղալից ըմեռանէին. այլ քարոզ հրեշտակապետին որ գոչէր առ կանայսն. ո: Ընթացեալ Պետրոս եւ Յովհաննէս. ի սուրբ գերեզմանն. եւ հանդիպեալ վարշամակին եւ սուրբ կտաւուցն. այլ քարոզ հրեշտակապետին որ գոչէր առ նոսա. ո:



Digitized by Google

# ԿԱՆՈՆ
# ՀԱՄՕՐԷՆ ՄԱՐՏԻՐՈՍԱՑ
# ՕՐՀՆՈՒԹԻՒՆՔ



## ԱՁ

ԺՈՂՈՎԵԱԼՔՍ ի յիշատակ սրբոց մարտիրոսացըն. միաբանութեամբ երգելով. || օրհնութիւն ի բարձունս երկնաւոր թագաւորին ։ Քանզի հեղմամբ արեան սոցա պարտեցան թշնամին . և մեծարեալ պարծի Սիոն երգելով. օրհնութիւն ։ Դասակցելոցն ընդ զօրըս վերին զուարթնոցն . յիշատակաւ բերկրեալ ի սրբութիւն սոցա երգեսցուք. օրհնութիւն ։

Որք ըզհանդէս նահատակութեան առ բռնաւորսըն ցուցին. և յաղթեցին հաւատով երրեակ լուսոյն եղեն մեզ առիթ. || աղաչանօք սոցա կեցո զմեզ ։ Որք ըզխաւար կռապաշտութեանցըն վանեալ հերքեցին . և կանգնեցին մեզ նըշան յաղթող ընդդէմ թշնամւոյն. աղաչանօք ։ Եւ հրաշափառ ճըգնութեամբ պատերազմեալք ի յերկրի վերհամբարձեալք երկնայնոց դասուցն եղեն երգակից. աղաչանօք ։

Որք զանձինս իւրեանց քեզ Հայր ընծայեցին. և Որդւոյ քում Քրիստոսի եղեն խաչակից. || աղաչանօք սոցա կեցո զմեզ ։ Որք ըզմարմինս իւրեանց քեզ տաճար մաքրեցին. և Հոգւոյդ սըրբոյ եղեն օթեվան. աղաչանօք ։ Որք ըզկեանս իւրեանց քեզ փոխանակեցին. և երկնից արքայութեանդ եղեն ժառանգորդ. աղաչանօք ։

Digitized by Google

Պատուական վըկայից զինուորութեանցըն դասքն. համաձայնեալ ընդ երկնային զօրսն երգեն ասելով. ‖ սուրբ ես Տէր զօրութեանց բընակեալդ ի լոյս: Կարծրագոյն տանջանօք լուծին ըզկար մարմնոյ. եւ բացարձակ փայլմամբ հոգւով երգեն ասելով. սուրբ: Համաձայնեալ ընդ նոսին արժանաւոր սիրով. ի տաճարի ձըգնաւորացն երգեմք ասելով. սուրբ:

Առաքինասէր վարուք հաճոյացան սուրբ վըկայքն. եւ ընտրեցան կամաւոր մահուամբն իւրեանց. ‖ եւ հրաւիրեցան ի կոչումն արքայութեան երկնից: Որք մատնեցին զանձինս իւրեանց ի փորձ սրոյ եւ հրոյ. եւ հեղմամբ արեանն իւրեանց եղեն վըկայք Քրիստոսի. եւ հրաւիրեցան:

ԲՇ. ՑՈՎ. Պատկերակից եղեր հողեղէն բընութեանըս տընօրինեցար յարգանդի կուսին Բանդ Աստուած. ըզմերս վերանորոգել պատկեր: Մերկացեալ ի ճաշակմանէ նախաստեղծին ըզփառս. միւսանգամ վերըստին շնորհելով. ըզմերս վերանորոգել ի փառս: Մըկրտեալ ի Յորդանան ի Յովհաննէ աստուածային բնութեամբ մարմնովըն զոր ի մէնջն էառ. ըզմեզ լուսաւորելով աստուածային ծագմամբն:

ԳՇ. ՄՐԳ. Երգս առեալ մարգարէիցըն հրաշալի ձայնիւ անդադար օրհնաբանեն ըզմարմնացեալն ի սուրբ կուսէն. ‖ որ երեւեցաւ մեզ ի փրկութիւն: Զնեղութիւն եւ զչարչարանըս յանձն առին կամաւորապէս ժուժկալեալ համբերեցին վասն անուանըն Տեառն. որ երե: Աներկիւղ քարոզեցին յաշխարհի ըզճըշմարիտ մարդեղութիւն մարմնացելոյն ի սուրբ կուսէն. որ երե:

ԽՇ. ԱՌ. Որք ի սկըզբանէ պատուեալ եղեն ի սէր

Digitized by Google

բոլորից Հօր. առաքելական կոչմամբ ըզտիեզերս հրաւիրեցին յուսով համաննել մասին. ‖ վարդապետութեամբ սոցա ամենեքեան օրհնեսցուք ըզՏէր։ Որք ականատեսք և սպասաւորք եղեն մարմնացելոյ Բանին. գեր ի վերոյ անմարմնոց դասուցն հանդիպելով շնորհի. վարդապետութեամբ։ Որոց դատողական աթոռ անհեղ ատենին հանդերձեալ մնայ. կատարել ի մեզ դատաստան ըստ գրեալն. առ սոսա անկցուք զըղջացեալ անձամբ պաղատելով. հաշտեցուցանել սորօք ընդ ըմեզ զահաւոր[illegible]ր զդատաւորն։

ՇԲ. ՃԳ. Որ շնորհօք սուրբ Հոգւոյն բարձեր ըզխաչըն փըրկչական յորդէգրութեան շընորհս. ով սուրբ հայր Անտոնիոս. արժանաւոր երկնային կոչմանն ի հրեշտակական դասակցութիւնն. ‖ օրհնեմք միշտ սուրբ զեղբայրութիւնն։ Այսօր և մանկունք սուրբ եկեղեցւոյ տօնեն ըզխաչակրօն քո սուրբ զյիշատակս. ով սուրբ հայր ճըգնաւորաց. զի ընկալցին զանապական պարգեւսն ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ. օրհնեմք։ Զառաքելապարգեւս վերընկալեալ ըզփառս յաջակողմեանն Քրիստոսի ընդ իմաստուն կուսանսն. հայցեսցես ի Քրիստոսէ ըզթողութիւն մեղուցելոցս. ի լսել ըզձայնն եթէ եկայք օրհնեալք Հօր իմոյ ժառանգեցէք ըզկեանսըն յաւիտենից։

ՀԳ. Որ ի քրովբէական կառսըն հանգչիս. այսօր իջեր յերկնից ի դասս առաքելոցըն սուրբ Հոգի. ‖ օրհնեալ ես թագաւոր անմահ։ Որ գնաս ի վերայ թեւոց հողմոց. այսօր ի հրեղէն լեզուս բաժանեալ հանգեար յառաքեալսըն սուրբ Հոգի. օրհնեալ։ Որ խնամես տեսչութեամբ զքո զարարածս. այսօր եկիր ի հաստատել զեկեղեցի քո սուրբ Հոգի. օրհնեալ։

Հն· Զհոգիս ծառայից քոց Քրիստոս. ընկալ ի դաս անդրանկաց գրելոց ի յերկինս։ Ընկալ վարըն սոցա ըզբանաւոր պատարագս ի մէնջ. եւ շնորհեա նոցա ըզթողութիւն գտանել յաւուրն յետնում։ Հաշտեա ի ձեռըն սուրբ մարտիրոսոյ և արեան քո Տէր. եւ պարգե-ւեա նոցա դասիլ յաջակողմեանըն քո։

ՄԾ· Ցնծա փառաց խոնարհեցար ի մեր բընու-թիւնըս. Բանն Աստուած եւ մարմնացար ի սրբոյ կուսէն։ Եւ ծնար ի սուրբ կուսէ անմարմնական մարմ-նով. ըզքեզ անդադար բարեբանեալ մեծացուցա-նեմք։ Այսօր զեկեալդ ի փրկութիւն ազգի մարդկան. միաբանութեամբ ամենեքեան մեծացուցանեմք։

ԽԶ· Երանելի աստուածասէր սուրբ դըշխոյն. ե-կեալ ի քաղաքն Երուսաղէմ. խընդրէր ըզփրկական ծագումըն մեծի փայլման. եւ քարոզէր նոցա զմորենին վառեալ որ ոչ այրէր. || մեծացուցանելով ըզծընեալըն ի կուսէն։ Եւ խոշտանգեալ ըզդասըս հրէից. խոստովանէր Յուդա. եկեալ ի տեղին Գողգոթա հաւատով. եւ քարոզէր նոցա զդուռն ընդ որ եմուտ Բանն Աստուած. մեծա։ — Փառք Հօր։ Եւ համբարձեալ ըզձայնըն Յուդայի. խընդրելով ի Տեառնէ ըզտենչալին ամենեցուն սուրբ ըզխաչն. եւ հաւատով գոչէր. եկայք երկըրպագեսցուք աստուա-ծային սուրբ նըշանիս. մեծացու։

— Այժմ և միշտ։ Աղօթիւք սոցա և բարեխօսու-թեամբ. պարգեւեա մեզ Քրիստոս մասն և բաժին. ընդ հրաւիրեալսն ի կոչումն արքայութեան երկնից։

Digitized by Google

## ԱԿ

ՅԱՄԵՆԱՅՆ ժամ օրհնեմք զքեզ. որ մարդասէր ես կեցո զմեզ։ Յօրհնութիւն ի նոր օրհնեսցուք զՏէր. զի նա է փառաւորեալ. յամենայն սրբոց իւրոց։ Օրհնեալ է այն որ արժանի արար զմեզ. հասանել ի մասըն ժառանգութեան սրբոցն ի լոյս։

‾Զօրութիւնք երկնայինք եւ անմարմնոց զինուորութիւնք: օրհնեն զքեզ ‖ ասելով սուրբ Աստուած։ °Եկեղեցիք արդարոց և ժողովք մարտիրոսաց. գովեն զքեզ ասելով։ ‾Ազգ մարդկան կենդանեաց սաղմոսիւք եւ օրհնութեամբ. աղաղակեն ասելով։

Ճգնաւորըք Քրիստոսի հեղմամբ արեան ձերոյ զկռապաշտութիւն բարձէք յաշխարհէ. եւ ի ճանապարհս արդարութեան դարձուցէք զմոլորեալս։ Ճշմարտութեան քարոզք եւ լուսաւորիչք տիեզերաց էք պարծանք եկեղեցւոյ. և լոյս հաւատացելոց։ Համբերութեամբ ձերով ընկալայք ի Քրիստոսէ զպսակս անապական. եւ դասաւորեցայք ի յերկինս ընդ անմարմնոցըն դասս։

Յաղթող նահատակքըն Քրիստոսի որք քաջութեամբ մարտեան ընդ թշնամւոյն եւ զբռնութիւն լուծին զտանջանաց. զի զանտանելի զվէրսն ի յանձն առին։ Լոյս փառաց փարէր զնոքօք. եւ հրեշտակք ի յերկինս ուրախանան զի կարապետք եղեն տիեզերաց. եւ լուացողըք մեղաւորաց։ Դասք անմարմնոցն աղաղակեն եւ ասեն. փութացարուք զհետ կոչմանըն Քրիստոսի եւ խընկազգեացք վայելեցէք. յաւիտենից ի յարքայութիւնն։

Պարծանըք հաւատոյ սուրբ ճգնաւորաց. որք զմար-

մինս իւրեանց ի վերայ քո պատարագեցին. եւ հեղմամբ արեանն իւրեանց նորոգեցին զաշխարհս: Դասաւորեալք ընդ անմարմնոց բազմութիւնսն փայլեն որպէս զարեգակն ի մէջ աստեղաց. զի զհոգիս մարդկան լուսաւորեցին աւազանին լուսով:

ԲՇ. ՀԱՅՐ. Այսօր ընդ երկնային զուարթունսն ժողովուրդք հայաստանեայց. տօնելով ըզյիշատակ սուրբ հայրապետաց շառաւիղաց սրբոյն Գրիգորի. օրհնեցէք ըզհայրն երկնաւոր: Այսօր որդիք Թորգոմայ ծնեալք աւազանաւն յորդիս Սիովնի. ի յիշատակի հարցն սրբոց որդւոց մեծի Լուսաւորչին. գովեցէք զՈրդին միածին: Այսօր երկնաւոր քահանայութեանն հաղորդ քահանայք սուրբ եկեղեցւոյ. ընդ քահանայապետս աստուածային օրինօք պատուեալս բարեբանեցէք զՀոգին ճշմարիտ. երգելով ըզփառս ի բարձունս:

ԳՇ. ՄՐԳ. Որ առաքեցեր նախընթաց քում գալըստեանդ սուրբ ըզմարգարէսն. աւետարանել տիեզերաց զիջումըն քո ի հայրականն ծոցոյ ի փրկութիւն հեթանոսաց. || բարեխօսութեամբ սոցա Քրիստոս խընայեա ի մեզ: Որ խոնարհեցար յանպատում փառաց Որդի Աստուծոյ. եւ եկիր ի կատարումըն մարգարէիցըն նախաձայն քարոզութեանցն անճառ խորհըրդով. բա: Որ լուծեր կենարար մահուամբ քո Տէր զերկունըս մահու. իջանելով ի դըժոխըս վերածեր ընդ քեզ զհոգիս արդարոց մարգարէիցն ի լոյսն անըստուեր. բարե:

ԽՇ. ԱՌ. Ի մաքրագործ հոգւոյն անօթ ընտրեալ եւ ձիւնափայլ. Թագաւորք երկրի իշխանք աշխարհի. անպականս զանձուց բաշխող Յակոբ Աղփեան Յուդա Յակոբեան. բարեխօս լերուք առ Տէր վասն անձանց մերոց: Երեքսրբեան մի տէրութեան խորհուրդ կա-

մաց եւ հազարապետք. փողոց հընչմունք բարբառոք աւետեաց ընդ ամենայն երկիր սուրբըդ Շմաւոն և Մատաթիա. բարեխօս լերուք առ Տէր վասն անձանց մերոց։ Բանին կենաց կանոնս քարոզ եւ աւետարանիչ. երգ փրկութեան հընչումն ահաւոր. ազգի մարդկան պարծանք սուրբըդ Մատթէոս. բարեխօս լեր առ Քրիստոս վասն անձանց մերոց։

ՇԲ. ԱՏՄ. Աղաչեմք ըզքեզ Տէր բարեխօսութեամբ սրբոց Ատովմանց. որք նահատակեցան ի ճակատամարտ պատերազմի յաղթող զօրան ընդդէմ թըշնամւոյն. || բարեխօսութեամբ սոցա Քրիստոս խընայեա ի մեզ։ Որք առին ըզսպառազինութեան ըզրահըս հաւատոյ սրտից իւրեանց. եւ ընկալան ի գլուխ սաղաւարտ փրկութեան ըզնըշան խաչին սուսեր ընդ մէջ ածեալ ըզճըշմարիտ սուրբ Հոգին. բարեխօսութեամբ։ Որք մաքրեցին զանձինս իւրեանց տաճար անուանըդ քում սըրբոյ. եւ բուրեցին հոտ անուշութեան զաղօթս իւրեանց ի տեղւոջ հեղման սուրբ արեան իւրեանց. բարեխօսութեամբ։

ՀԳ. Որ յերկնային զօրս անմարմնոցըն նախ հեղեր առատապէս Հոգւոյդ ճըշմարիտ. զաստուածային և զգերագոյն քո իմաստութիւնդ լինել փառաբանիչ սուրբ Երրորդութեանդ. || ընդ նոյսին փառաւորեմք զերրեակ միութիւնդ։ Որ զկերպարանն աստուածային ստեղծեալ Երրորդութեանդ խորհըրդական կցութեամբ. զարդարեցեր փըչմամբ շնորհաց քոց կենդանանարար. եւ ընդ ծնեալսն առ ի նմանէ խօսեցար օրինօք եւ մարգարէիւք. ընդ։ Որ յերկրորդի լինելութեանս յետ յարութեան քում էական կցին. մըտեալ ի վերնատունն դրօքըն փակելովք շնորհելով ըստ առաջին փըչմանն ըզքեզ

Digitized by Google

մետասանից առաքելոցն ասաց առէք հոգի սուրբ . ընդ նոսին ։

Հն. Յորժամ յերկնից գոչէ փողն ազդեցութեան ահանելով տիեզերաց ի դատաստանն ահաւոր . յայնժամ աւուր յահեղին ‖ յիշեա Տէր եւ ըզմեր ընդ ընծեցեալսն եւ հանգո ընդ սուրբս քո ։ Յորժամ ճառագայթք աստուածութեանըրդ փայլեն ի յարեւելից . եւ դըպրութիւնք հրաշիցըն բանին յայնժամ աւուր յահեղ . յիշեա ։ Զարհուրեալ դողան արարածք ի ձայնէ սրավբէականգոչ փողոյն . յորժամ հարկանէ հրեշտակապետն եւ կոչէ ի դատաստանն զազգս որդւոց մարդկան . յայնժամ աւուր յահեղին յիշեա ։

ՄԾ. Որ նախիմաց իմաստութեամբ տնօրինեցեր զխորհուրդ սուրբ եկեղեցւոյ . խորագոյն արկեալ հիմունս հաստատութեան ըզդասս արդարոց . ‖ աղաչանօք սօցա խընայեալ ի մեզ ։ Որ զօրհնութիւն նախաստեղծիցն աստուածազոյգ արուաց եւ իգաց . պայծառացեալ վայելչապէս ծաղկեցուցեր այսօր ի Յովակիմ եւ ի յԱննա . աղաչանօք ։ Որ ըզխոստումն Աբրահամու նահապետին մեր ըստ հոգւոյ . քահանայական և թագաւորական զաւազանացըն միացեալ ցուցեր այսօր ի յԱննայէ . աղաչանօք ։

ԻԶ. Խաչ քո եղիցի մեզ ապաւէն բոցանիշ փայլմամբն իւրով . խորտակեաց ըզթըշնամին և ելոյծ ըզդատակնիք . անուանեալ փայտըն կենաց ի փըրկութիւն տիեզերաց ։ Վերացեալ ցընծան երկինք և երկիր ուրախանայ . ընդ յայտնել սըրբոյ խաչին սեաւակնաձեւ քառաթեւին . որ զաշխարհըս լուսաւորեաց արեգականկերպ ճառագայթիւք ։ — Փառք Հօր ։ Ցընծացաւ Երուսաղէմ բերկրեցան հաւատացեալք . Նորահրաշ զար-

Digitized by Google

մանկէս ապըստամբեաց ազգ հիւսիսոյ Հայաստանեայց. այն որ ըզհրաշս զայս ներգործեաց մեզ նորագոյն յոյս հաստատեաց: Հաւատարիմ և իմաստուն Գրիգորիոս անուն արթուն նըման խաչի մահուամբ Որդւոյն չարչարանօք իւր սուրբ մարմնոյն. զազգըս Հայոց կոչեաց ի նոյն գանս և հարուածս եւ խրատագոյն. միայն բանին Հօր իմաստուն տուք օրհնութիւն զօրըք հրաբուն:

ՇԲ. ՀԱՅՐ. Որ լուսով աստուածային բանիւն զարդարեցեր զեկեղեցի. և զխաւարն անգիտութեան հալածեցեր յոգւոց մարդկան. || ով տէր սուրբ Գրիգոր. բարեխօս լեր վասըն մեր առ միածին Բանըն Հօր: Որ զհամագոյ բընութիւն միասնական Երրորդութեանըն յայտնեցեր եկեղեցւոյ խոստովանել միութիւն. ով տէր: Որ զփըրկական տնօրէնութիւն մարդացելոյն վասըն մեր. ուսուցեր մի յերկուց նոր խառնուածն ըսքանչելի. ով տէր:

ՀԳ. Սարսափելի հողմոյ նըման անձեռագործ սաստիկ հընչմամբ. երեւեցար ի վերնատանն Հոգիդ դասուն երկոտասան. որք առ ի քէն մըկըրտեցան որպէս զոսկի հրով մաքրեցան. || մաքրեա ի մէնջ ըզմէգ մեղաց և ըզգեցո ըզլոյս փառաց: Եկիր յերկիր աստուածաբար զատել զաշխարհս իշխանաբար. ընդ արդարութեան և ընդ մեղաց և ընդ չարին զատաստանաց. բացեր ըզգանձդ անհիւթական պարգեւս ետուր որդւոց մարդկան. մաքրեա: Սէրն ի սիրոյ զսէրդ առաքեաց յինքըն զանդամս իւր քեւ յօդեաց. զեկեղեցի իւր զոր շինեաց եօթըն սեամբ քո հաստատեաց. տընտես ի նմա եդ զառաքեալսն եօթնեակ շնորհօք քո զարդարեաց. մաքրեա:

ՀՆ. Հրեշտակային ձայնիւն օրհնեսցուք զամենասուրբ զԵրրորդութիւնն փառաւորելով ընդ Հայր. որ վերակոչեաց || զամենեսեան ի մահուանէ յանմահութիւն: Երգեցէք Տեառն երգ նոր եկեղեցիք սրբեցելոց. Քրիստոսի երկրպագելով. որ վերածնեաց զամենեսեան: Սրբասաց ձայնիւն օրհնեսցուք հոգեւորական հնչմամբ գովեսցուք. սուրբ զՀոգին փառաւորելով. որ վերանորոգեաց զամենեսեան:

ՄՍ. Սուրբ եւ աստուածածին Մարիամ ցանկալի կուսից եւ պարծանք ազգի մարդկան. || մայր և աղախին մեծացուցանեմք: Անկէզ մորենի և տաճար ընդհանուր լուսոյն. անարատ և անխառն խառնելի կուսութիւն. մայր: Խորհուրդ կենաց եւ մայր կենդանութեան և առագաստ հրափայլ ծագմամբ. մայր:

ԽՁ. Այսօր խնդրի պատուական փայտ խաչին թաղեալն ի Գողգոթայ ի ձեռն աստուածասէր դշխոյին. || Եկայք հաւատացեալք երկրպագեսցուք աստուածային սուրբ նշանին: Այսօր ընծայէ Գողգոթայ ըզծածկեալն ի յերկրի. վերաբերեալ անուշահոտ խնկովք ի ձեռն երանելւոյն Յուդայի. Եկայք: — Փառք Հօր: Այսօր ի ձեռըն փրկական սուրբ խաչին կենագործի պատանին մեռեալ. եւ ողբայ սատանայ ըզկործանումն իւր. իսկ մեք Քրիստոսի հաւատացեալք երկրպագեսցուք:

— Այժմ և միշտ: Այսօր ցընծայ վերին Երուսաղէմ. ընդունելով ըզսուրբ յարկսըն լուսեղէն. ուրախանան և հրեշտակք ասելով. փառք քեզ փառք քեզ Աստուած:

ղացս։ Ի տաճարի հանգըստեան. սըրբոյն մեծին Մինասայ. եկայք հաւատացեալք յուսով երկըրպագեսցուք։

ՀԳ. Այսօր երկնայինքն ուրախացան ընդ երկրաւորացս նորոգման. քանզի նորոգողն էից Հոգին էջ ի սուրբ վերնատանն. որով նորոգեցան դասք առաքելոցն։ Այսօր հողանիւթեալ բնութիւնս ցընծայ ընդ Հօր հաշտութեան. քանզի որ երարձ զՀոգին ի մարդկանէ մարմին եղելոյ. դարձեալ վերըստին ըզնոյն պարգեւէ։ Այսօր մանկունք եկեղեցւոյ տօնեն ցընծութեամբ զգալուստ սուրբ Հոգւոյն. որով զարդարեցան ի զգեստըս լուսափայլս եւ գերապայծառս. երգեն ընդ սրովբէսն զերեքսըրբեանն։

ՀՆ. Գալուստ է միածնին փողով և փառօք Հօր. եւ ըզհողեղէն բնութիւնս հրեղէն նորոգէ։ Լուսաւոր են ճանապարհք արդարոց. և ի բիւրաւոր բանակըս հրեշտակաց ամպովք ընթանան։ Ի վերինն Երուսաղէմ թըռչին ամպովք ընդ առաջ Տեառըն յօդս. եւ այնպէս յամենայն ժամ ընդ Տեառըն լինին։

ՄԾ. Սիւն լուսոյ և ամպ հովանի սուրբ կոյս որ ցօղեցեր ի մեզ ըզցօղն երկնային. ‖ զքեզ բարեբանեմք Աստուածածին կոյս։ Անկէզ մորենի եւ սրովբէ հողեղէն սուրբ կոյս. քանզի պըտուղըն կենաց ի քէն տըւաւ մեզ. զքեզ։ Անիծից լուծիչ և քաւիչ մեղաց սուրբ կոյս. որ զանտանելին յէից ի գիրկըս քո բարձեր. զքեզ։

ԽՁ. Ճառագայթ փառաց Հօր Որդիդ միածին. որ ըզլոյսդ անվայրափակ մարմնով պարագրեալ. ‖ այսօր ի Թաբօր փառօք փայլեցեր։ Որ անտես սրովբէից անհաս ի վեր քան ըզբան. ծառայի կերպիւ պարա-

Digitized by Google

ծածկեալ ըզլոյսդ անըստուեր. այսօր։ — Փառք Հօր։
Որ հրեղինացն անմերձենալի հուր աստուածութեանդ.
Ի հողեղէնս խոնարհեալ լոյսդ արփիական. այսօր։
— Այժմ և միշտ։ Զհայր և զՈրդի և ըզսուրբ զհո-
գին. փառաւորեմք ասելով. երեքսրբեան տէրութիւն
կեցո ըզմեզ. բարեխօսութեամբ սրբոց քոց։

## ԳՁ

ԶԱՐԻԱՆԿԱՆ մահ սրբոց քոց Քրիստոս ընդ երկնային
զօրսն այսօր երգակցեալ տօնեմք. որք հանդիսացան
ընդդէմ բռնութեան թշնամւոյն։ Անմարմինք ի
մարմնի ցուցան գերիվերոյ սրոյ և հրոյ տանջանաց.
զպատուական մահս նորեանց ընծայեցին քեզ Քրիս-
տոս բանաւոր զենմունք։ Նահատակեալըք ճգնու-
թեամբ ի փորձ զանազան տանջանաց. համբերութեամբ
վանեալ ըզթշնամւոյն պատերազմ. փոխեցան ի զօրս
վերին զուարթնոցն։

Երանելի սուրբ հայրապետք. չարչարեալք վասն
Տեառն համբերեցէք. յաղթելով բռնաւորին ‖ դասակից
եղէք վերնոցն։ Ճգնեալ նահատակեցայք յերկրի.
յաղթողք ի պատերազմի կռուելով ըզսատանայ.
դասակից։ Լուսաւորեալք երկնային լուսովն պայծառա-
ցեալք ի Հոգւոյն սրբոյ. բարեխօսեցէք առ Տէր վասն
անձանց մերոց։

Երանելի սուրբ հայրապետք որք կամաւ չարչարե-
ցայք յանձն առէք զհամբերութիւն. ‖ յարժանաւոր
աղօթըս ձեր յիշեսջիք զանձինս մեր։ Փոխանակ ա-
րեանըն Տեառն. ձեր արիւնդ հեղաւ յերկրի եւ հոտ
անոյշ բուրեաց յաշխարհ. յարժանաւոր։ Փոխանակ



Digitized by Google

անցաւորիս. Ձեզ անանցն է պատրաստեալ պըսակ փառաց ի Քրիստոսէ. յարժանաւոր աղօթըս ձեր յիշեսջիք զանձինըս մեր։

Ընդ վերին զըւարթունսըն բարեբանեմք ‖ ըզքեզ Տէր. սուրբ սուրբ սուրբ ես Տէր զօրութեանց կեցո ըզմեզ։ Յիշատակաւ սըրբոց մարտիրոսաց գոհաբանեմք ըզքեզ։ Երեքսըրբեան ձայնիւն աղաղակեմք առ քեզ։

Զանյաղթելի ճըգնաւորացն ըզյիշատակս. ‖ ե կայք հաւատացեալք ամենեքեան պատուեսցուք։ Քանզի մարմին ունելով զտանջանս արհամարհեցին. Նըմանողըք լինելով չարչարանաց Փըրկչին. ե կայք։

ԲՇ. ՅԿԲ. Հայրապետ սուրբ եւ անբիծ և ընտրեալ յորովայնէ. սքանչելագործ վըկայ եւ պարծանք ազգի մարդկան. ‖ առ Քրիստոս բարեխօսեա վասըն մեր քո տօնողացս։ Հովիւ հոգեւոր բանաւոր հօտի. լուսաւորիչ տիեզերաց սուրբ լուսոյ կանգնեալ ի մէջ եկեղեցւոյ. առ։ Համատարածութիւն հաւատոյ պըսակ ի գլուխ եկեղեցւոյ. պայծառ քարոզ տիեզերաց և պարծանք ազգի մարդկան. առ։ Ի տաճարի քում սըրբութեան երկըրպագեմք քո նըշխարաց. փառաւորեմք զօր յիշատակի կատարման քո հանգըստեան. առ։

ԳՇ. ՀԱՅՐ. Ժողովեալ սուրբ հայրապետքըն հրաւիրմամբ Հոգւոյն սըրբոյ. վերըստին հաստատեցին զառաքելական քարոզութիւնն. ի վերայ վիմի հաւատոյ հիման սուրբ եկեղեցւոյ։ Որք զինու Հոգւոյն սըրբոյ արիաբար պատերազմեալք. վանեցին զընդդիմամարտ մոլութիւն հերձուածողացն. որպէս հովիւք քաջք հերքեցին ըզգայլսն ի հօտէ գառանց։ Եւ զհաւատըս ճըշմարիտըս սուրբ Երրորդութեանն. ընդհանուր քարոզեցին յեկեղեցիս ուղղափառաց. հաւատալ ի Հայր եւ յՈրդի եւ յամենասուրբ Հոգի։

ԽԷ. ԱՌ. Զառաջնորդս և զվարդապետս եկեղեցւոյ քում սրբոյ. յիշատակաւ պատուեմք այսօր. || բարեխօսութեամբ սոցա Քրիստոս խնայեա ի մեզ։ Ժիր մշակք անպարտելի կաթողիկէ եկեղեցւոյ. և պսակ պարծանաց հաւատացելոց. բարեխօսութեամբ։ Համբարձապետք աստուածային խորհրդոցն. և բացողք դրանն արքայութեան երկնից. բարեխօսեցէք առ Տէր վասն անձանց մերոց։

ԾԲ. ՈՍԿ. Որք արժանաւորեցայք կոչել յաշակերտութիւն առաքելոյն Թադէոսի. և աստուածային հրով մաքրութեան ոսկի փորձեալ գտայք ի բնակարանս հրեշտակաց. || Ով երանելի սուրբ Ոսկեանք բարեխօսեցէք առ Տէր մաքրել զմեզ ի մեղաց մերոց։ Որք անհրաժեշտ դաւանութեամբ քարոզեցէք զՔրիստոս ի դրունս Թագուհւոյն. մկրտելով զքաջ նահատակն. և յակունս Եփրատայ ի ծաղկազարդ վայելչութիւնսն. ով։ Որք անպարտելի մնացէք ի հրապուրանաց որդւոյ թագաւորին. չարչարեալք վասն Քրիստոսի. արագապէս խողխողեցայք պատարագ ընդունելի. ով։

ՀԳ. Արեգակն արդարութեան Քրիստոս ծագեալ յաշխարհս հալածեաց զխաւարն անգիտութեան. և յետ մահու և յարութեան համբարձաւ առ Հայր յորմէ ծագեաց. որ երկրպագի յերկնաւորաց և յերկրաւորաց ընդ Հօր և սուրբ Հոգւոյն. վասն որոյ և մեք երկիրպագանեմք Հօր Հոգւով և ճշմարտութեամբ։ Որ փոխանակ ծոցածին Բանին որ ել յերկինս. առաքեցաւ աւետիքն Հօր ի բարձանց հոգին ճշմարտութեան. մխիթարել զորս յԱդամայ տրտմեցելոց և հրազինել զընտրեալ դասս առաքելոցն.

Digitized by Google

‖ վասն որոյ և մեք երկիրպագանեմք Հօր Հոգւով և ճշմարտութեամբ: Այսօր տրտմական և գիշերային լուծան երկունք ծննդեան նախամօրն. քանզի զծնեալըն մարմնով ի մահ և յապականութիւն. վերըստին ծնանի Հոգին յորդւոյ լուսոյ Հօրն երկնաւորի. վասն:

ՀՆ. Ցանկալի քո գալըստեանըն յորժամ գաս Տէր ի յերկնից աստուածային քո զօրութեամբդ. և նըշան սուրբ խաչին պայծառանայ ի մէջ երկրի: Նորոգին տարերք երկրի ի ձայնէ հընչման փողոյն որ գոչէ զկենդանութիւն. ասէ արիք եկըն Տէր կենդանեաց և մեռելոց: Շնորհեա մեզ Տէր ողորմութիւն ի ծագել սըրբոյ խաչին որով եղեւ մեզ փըրկութիւն. զի նովաւ ելցուք ընդ առաջ Աստուածորդւոյդ որ ի յերկնից:

ՄԾ. Զանճառելի լուսոյ մայր. և ըզբնակարան անըսկըզբնակից Որդւոյն. ‖ օրհնութեամբ մեծացուցանեմք: Զանհաս տընօրէնութեան մայր. և զանձնաւոր տաճար Աստուծոյ Բանին. օրհնութեամբ: Զբոլորից փըրկութեան մայր. որ զանտանելին յէից ի յարգանդի եբարձ. ըզնա ամենեքեան օրհնութեամբ:

ԽՁ. Քեզ Քրիստոսի կաթուղիկէ եկեղեցւոյ շնորհողի. զյաղթական ըզպատուական զաստուածընկալ սուրբ նըշանս. մատուցանեմք զօրհներգութիւն միշտ ի բարձունս: Սա կամաւ քո Քրիստոս և թեւոք ամենազօր սուրբ Հոգւոյն. և դասուք հրեշտակաց թռուցեալ եկաւորի. ի լեառըն Վարագայ բընակի ի նմա: — Փառք Հօր: Եկայք ժողովուրդք. երկըրպագեսցուք աստուածային սուրբ նըշանիս. համբարձէք միաբան ըզձեռըս ձեր ի սըրբութիւն. և ըզբնակեալն ի սմա միշտ փառաւորեսցուք:

Digitized by Google

— Այժմ և միշտ։ Քանզի տեսարան եղեն հրեշտակաց և մարդկան. զյաղթութեան պսակն ի Քրիստոսէ ընկալան. և բարեխօսեն առ Տէր վասն անձանց մերոց։

## ԳԿ

ԱՅՍՕՐ հրեշտակաց դասքն ի յերկինս ուրախանան ի վերայ ճգնութեան սրբոցն։ Այսօր ճգնազգեաց սրբոց դասքն ի յերկրի պսակեցան երկնային պատուածեղէն փառօք։ Այսօր անմարմնոց զինուորութիւնքն մեծապէս տօնեն. քանզի երկրաւոր զինաւորաց բազմութիւնքն ընծայեցան ի խորան սրբութեան երկնից։

Սուրբ Աստուած Հայր անսկիզբն. որ փառաւորեալդ ես ի մէջ սրբոց քոց. օրհնեմք ‖ զքեզ ընդ զուարթունս երկնից։ Սուրբ Աստուած Որդիդ միածին. որ պսակեցեր յաղթող զճգնութիւն սրբոց քոց. գովեմք զքեզ։ Սուրբ Աստուած Հոգիդ ճշմարիտ. որ նորոգեցեր զտիեզերս ճշմարիտ երկրպագութեամբ սուրբ Երրորդութեանդ. բարեբանեմք զքեզ անլռելի ձայնիւ։

Ճգնաւորական աշխատութեանց համբերեցին սուրբ մարտիրոսքն. և զպատերազմն չարին վանեցին ժուժկալութեամբ. ‖ բարեխօսութեամբ սոցա Քրիստոս խնայեա ի մեզ։ Որք հեղին զարիւնս իւրեանց փոխանակ արեան քո Տէր. և զբռնութիւն հրապուրողին վանեցին ժուժկալութեամբ. բարե։ Եւ զպսակս անապական ընկալան ի քէն Քրիստոս. և դասաւորեցան ի դասս վերին զուարթնոցն. բարե։

Նահատակք յաղթողք քաջք ի մարտի. երանելի

Digitized by Google

սուրբ մարտիրոսք. || որք վանեալ ըզթըշնամին խոր-տակեցէք։ Հրեշտակացըն դասքըն տօնակից են մեզ. եւ ջոկք աթոռոցն ը զուարճացեալ բերկրին. ընդ վարդագոյն ձեր հեղումն արեան. որք։ Անթառամ պըսակըն ձեզ աւանդեալ մընայ. քան զակնըս պատուականըս գերագոյն հրաշիւք. որք։

Այսօր մարտիրոսաց դասքըն. ցընծացեալ բերկրին ընդ անուան Տեառն. Քրիստոսի Որդւոյն Աստուծոյ։ Զայն ի յերկնից վըկայեալ. ասէ եկայք օրհնեալք Հօր իմոյ. ժառանգորդք երկնից խորանացն։

ԲՁ. ՍՏ. Առաքեա ի մեզ Տէր ըզբազում գըթութեան քո զողորմութիւն. բարեխօսութեամբ սըրբոյ նախավըկային քո և ողորմեա։ Որում զերկնայինըն բացեր ըզդուռն. ցուցանելով զանճառելի խորհուրդ. || սորին աղաչանօք խընայեա ի մեզ Տէր և ողորմեա։ Որ աղօթանուէր հայցմամբ ըզթողութիւն խընդրելով ի քէն. անօրէն սպանողաց իւրոց. սորին։

ԳՁ. ԳՐԻ. Խոստովանող Քրիստոսի ճըշմարիտ վըկայ. բազմաչարչար նահատակ տէր Գրիգորիոս. զպակասութիւն չարչարանաց Տեառն ի մարմնի քում կրեցեր. որով ցընծայ եկեղեցի ի փառս որդւոց Սիօնի։ Ծնող հոգեւոր աստուածանման սիրով. զորովագութ հայր պարծանաց տէր Գրիգորիոս. չարչարանօք մարմնոյդ մաքրեցեր ըզմեզ ի յաղտոյ մեղաց. եւ ծընար որդիս լուսափայլ բանիւդ։ Կերպարան փառաց միածնի Որդւոյն. մարտիրոս յաղթող տէր Գրիգորիոս. բեւեռս երկաթիս ընկալան երկնագնաց թաթք ոտից քոց սուրբ. զի բեւեռեսցես ըզմեզ յերկիւղն Աստուծոյ։

ԽՁ. ՆԵՐ. Այսօր ցընծայ եկեղեցի ընդ անմարմնոցըն դասակցեալ տօնելով զյիշատակըս քո տէր սուրբ

ներսէս. որ ի Հոգւոյն սրբոյ աղաւնակերպ իջմամբ վկայեցար. ‖ բարեխօսեա առ Քրիստոս վասն անձանց մերոց: Քահանայապետ ընտրեալ. արժանաւորս շնորհօք Հոգւոյն բաշխեցեր զփրկական մարմին եւ զարիւնն Տեառն. յորում հրեղէն սիւն ի յերկնից իջեալ. բարեխօսեա: Արդ աղաչեմք զքեզ. լուսաւորիչ հոգւոց մերոց նմանեալ Մովսէսի նախամարգարէին մեծի. լուսափայլեալ դիմօք աստուածահրաշ տեսլեամբ. բարեխօսեա:

ՇԲ. ՔՌ. Այսօր ընդ անմարմնոցն դասս պարեն. որք ի Սեբաստիա ճգնութեամբ պատերազմեալք յաղթեցին թշնամւոյն. ‖ բարեխօսութեամբ սոցա Քրիստոս խնայեա ի մեզ: Եւ զմոլութիւն անօրէն բռնաւորին. աստուածային արութեամբ վանեալ. տարեալ ժուժկալութեամբ համբերեցին տանջանացն. բարեխօսութեամբ: Ի ձուլել պատուական մարմնոցն ի դժընդակ օդոյն. տագնապէին ի լճին սառուցելոյ յանտանելի տանջանացն. զաչս ի յերկինս համբարձեալ եւ զօգնութիւն ի քէն խնդրէին. որ յոյս և ապաւէնդ ես քոց սրբոց խնայեա ի մեզ:

Հգ. Զանըսկըզբնաբար բղխումն ի Հօրէ զՀոգին ճշմարիտ. որ հրանշմամբ ձայնի էջ ի վերնատունն այսօր նման սաստիկ հողմոյ. ‖ զոր փառաւորեմք հոգեւոր երգով: Զհամագոյակիցն Հօր եւ Որդւոյ զբաշխողն շնորհաց. որ ի հրեղէն լեզուս բաժանեալ զբանն ընտրութեան լեզուաց շնորհեաց սուրբ առաքելոցն. զոր: Զաղբիւրն իմաստութեան ըզկատարեալն անձնաւորութեամբ. որ խօսեցաւ յօրէնս և ի մարգարէս եւ յաւետարանս. զոր:

Հն. Փառըք քեզ Աստուած փառաւորեալ յաւիտեան.

Digitized by Google

որ կենարարդ ես մարմնոց եւ գոյացուցիչ հոգւոց մեր ննջեցելոցն։ Որ բարձրացար ի խաչին վասն Ադամայ նորոգման. եւ իջանելովդ քո ի դժոխս աւար առեր ընդգերեալսն։ Ընդ գինս արեան քո յիշեա կենագործող աշխարհի. եւ հանգըստեան արժանաւորեա յերուսաղէմըն վերին։

ՄԾ. Զաստուածածինն և զմիշտ կոյսն. անդադար օրհնեսցուք քանզի ծագեաց մեզ լոյս երեսաց եւ փրկիչ անձանց մերոց։ Խնդա եւ ուրախ լեր անհարսնացեալ մայր. քանզի որ ի քէն ծնաւ. մեծ Աստուած ի փրկութիւն անձանց մերոց։ Գանձ անապական գտար սուրբ Աստուածածին. բարեխօսեա Քրիստոսի Աստուծոյ մերոյ կեցուցանել զանձինս մեր։

ԽՁ. Ցաղթող եւ գնոր օրհնութիւն միշտ ի բարձունս երգեսցուք թագաւորին Քրիստոսի հաստատեցելոյ ժողովուրդք։ Որ եկն ի լուսաւորել զընտրեալ սուրբ զեկեղեցի. եւ պսակեաց սուրբ խաչիւն նըմա ըզփառս երգեսցուք։ — Փառք Հօր։ Այսօր եւ մեք տօնեսցուք զնաւակատիս սուրբ խաչին. եւ փրկողին մատուսցուք փառս եւ պատիւ յաւիտեան։

— Այժմ և միշտ։ Լըցէք ըզտեղի անկելոցն. ապըստամբողական թըշնամւոյն որ ի յերկնից վայր անկեալ։

ԴՁ

ԱՅՍՕՐ յիշատակ սըրբոցն և փայլեն նըշխարքն սոցա ի մէջ եկեղեցւոյ ‖ աղաչեսցուք ըզՏէր. սոքօք խընայեաց ի մեզ։ Հեղմամբ արեան սոցա մեծարի մայր սոցա իմանալի Սիոն աղաչեսցուք։ Տաճար են սուրբ

հոգւոյն կենդանենի ոսկերք սոցա հիւանդաց բըժիշկ տղաչեսցուք:

Այսօր ծըգնութեամբ սըրբոցն ը զուարճանայ եկեղեցի ուրախութեամբ մեծաւ հանդերձ որդւովք նորովք. տօնելով զյիշատակ սոցա: Սոքա են դեղ կենաց. պարգեւեալ մեզ ի Քրիստոսէ ի բըժըշկութիւն. պատուական ոսկերք արեամբն իւրեանց: Իշխանութիւն ունին ի հոգւոյն սըրբոյ առաջնորդել մեզ յերուսաղէմըն վերին. ի քաղաքն կենդանեաց ի մեծըն Սիոն:

Որք զատ ի Քրիստոսէ զչարչարանըս յանձն առեալ համբերեցէք ով աստուածասէր հայրապետք. եւ արժանի եղէք զերկնայինն առնուլ պըսակ: Որք փորձեցայք չիջանելոյ հրով ժառանգեցէք պատրաստեալ ձեզ զարքայութիւնն. համարձակութիւն ունիք բարեխօսել առ Տէր վասն անձանց մերոց: Որք զամբարշտութեանցըն վանեցէք զկռապաշտութիւն ով աստուածասէր հայրապետք. հաստատութիւն ի Քրիստոսէ հայցեցէք անդադար սուրբ եկեղեցւոյ:

Ցընծութիւն է այսօր հրեշտակաց եւ մարդկան. զի զխորտակեցեալ ըզթըշնամին վանեալ խորտակեցին սուրբ վըկայքն. եւ եղեն յաղթողք ի պատերազմի: Մարմնով եւ արեամբ մարտեան ընդդէմ զինու. վիրաւորեալք ի մարմնի վիրաւորեցին ի մահ ըզբելիար. եւ առացան պարծանըս յաւիտենական: Երանաւետեալք ի հոգեղէն զըւարթնոց. եւ բարեբանեալք ի դասուց մարմնաւորաց սուրբ վըկայքն. անեղին աջովըն պըսակեալ եղեն:

Ցնծամանկ է այսօր քաջ նահատակաց Քրիստոսի սըրբոց վըկայիցն. ‖ Եկայք ժողովուրդք ցընծութեամբ տօնեսցուք: Քանզի տեւողք ի տանջանս եւ յաղթողք ի մարտի եւ պըսակեալք ի Հօրէ. Եկայք:

ԲՇ. ՀՐՇ. Որ ի հրեղէն զօրաց երկնից փառաբանիս Աստուած. որով զերկնային անմահական աստուածային ըզշնորհս հեղեր յորդիս Ադամայ. ‖ Աղաչանօք սոցա ողորմեա մեզ Աստուած: Երևելով հողեղինացս անհիւթականքն ի ձև մարմնոյ. որք և ծանուցին մարգարէիցն ըզխորհուրդ քո գալըստեանդ բազմապատիկ տեսլեամբ օրինակելով. աղաչանօք: Անճառելի տնօրէնութեանդ քո աւետաբերք առաքեցան. Գաբրիէլ և Միքայէլ անմարմնական դասուքն իւրեանց յերկիր սպասաւորելով. աղաչանօք:

ԳՇ. ՄՐԳ. Որ զյառաջագոյն ընտրեալսն առաքեցեր յաշխարհս սուրբ զմարգարէսն. աւետաբանել ըզքո գալուստ անթարգմանելի տնօրէնութեամբ. ‖ Սոքօք շնորհեա հաստատութիւն եկեղեցւոյ քում սրբոյ: Որոց Տէր իշխանութիւն բացատրել զիջումըն քո յաշխարհ. աստանօր կատարեցեր զմարգարէիցն ըզտեսութիւն. սոքօք: Որ ըզմահ գերի առեալ մահուամբ ըզմահ կոխեցեր. արձակելով զերամբս մարգարէիցըն յանըստուեր քո հանգիստ. սոքօք:

ԵՇ. ԱՌ. Ամոլըք հաւատոյ. այսօր փայլեն հայր սուրբ և քո սուրբ եկեղեցւոյ. ‖ Մարդասէր Փրկիչ տօնողացս ողորմեա: Բարեխօսութեամբ Պետրոսի և Պօղոսի քո սուրբ առաքելոցն. մարդասէր: Լուսաւորեալք ի սոցա դպրութենէս. փառաւորեմք սուրբ զԵրրորդութիւնդ. երկաքանչիւրոցն աղօթիւք տօնողացս ողորմեա:

ԶԲ. ԻԳՆ. Որ հրաւիրեցեր զյառաջագոյն ընտրեալսն ի սկզբանէ աշխարհի. ի հարսանիսն անմահական կոչելով յուրախութիւն ընդ բազմելոցն յառագաստին զաստուածազգեացն. ‖ Աղաչանօք սորա կեցո ըզմեզ փառաց Թագաւոր: Որ յաթոռըս քերովբէականըս վե-

բանըստեալ հանգչէիր Որդի Աստուծոյ. հաճեցար խոնարհութեամբ բառնալ ի գիրկըս յորդւոց Ադամայ. Տղայ: Որ ըզբաժակ անմահութեան սիրոյ քո արբեալ երանելիքն ի գնամտիոս. որպէս ցորեան աստուածային գազանաց մանրեալ ժանեօք հաց սուրբ գտաւ Աստուծոյ. Տղայ:

Հգ. Առաքելոյ Տղաւնոյ. Ի ձայնելով մեծաձայն հընչմամբ ի բարձանց. ի նմանութիւն լուսոյ փայլման հրազինեաց անկիզելի զաշակերտսն. մինչդեռ նըստէին ի սուրբ վերնատանն: Անիւթական Տղանի. մկըրտնելի որ քըննէ ըզխորս Աստուծոյ. զոր առեալ ի Հօրէ պատմէ զահաւոր և ըզմիւսանգամ գալուստն. զոր քարոզեցին համագոյական: Օրհնութիւն ի բարձունս. ելողին ի Հօրէ Հոգւոյն սրբոյ. որով առաքեալքն արբեցան անմահական բաժակաւն. եւ հրաւիրեցին զերկիրս ի յերկինս:

Հն. Փառաց քեզ Հայր. որ կենարար ես մարմնոց եւ գոյացուցիչ հոգւոց. Ընկալ զօրհնաբանութիւն հոգիս յանմահական քո հանգիստ: Մարդասիրի Հօր Որդի. որ պատկերակից եղեր հողեղինացս եւ խաչեցար. ընկալ: Ամենազօր սուրբ Հոգի. որ անդորրիչ ես նեղելոց եւ մխիթարիչ հոգւոց. ընկալ:

Մծ. Ծագումըն հրաշալի որ անյայտ էր ի մէնջ. եւ բանն հայրական անըմբռնելի. հուր փայլակնացեալ և ի մարմնի բնակեցաւ. անվընաս պահելով զարարածս ամենայն: Ծագումըն հրաշագործ որ ի կուսէն ծագեցաւ. ճառագայթելով զարարածս ամենայն. Երկինք ցընծային և երկիրս ուրախանայր. եւ Քրիստոս Աստուած ընդ մարդկան շըրջեցաւ: Առ քեզ ապաւինիմք ամենասըրբուհի. գերագոյն և հրաշալի եւ բաշխող բարութեանց. աղբիւր ես ծարաւեաց եւ

Digitized by Google

հանգիստ աշխատելոց. եւ եղեր վերընկալ աստուածային բանին ։

ԽԶ. Քրիստոս Աստուած մեր. շնորհեա մեզ ընդ Գետրոսի եւ ընդ որդւոցըն Զեբեթեայ. արժանաւորել քում աստուածային տեսլեանդ ։ Համբարձցես ըզմեզ Տէր. առաւել քան ըզգալի զԹաբօրական ըզլեառըն յերկնաբերձ եւ յիմանալի խորանսդ ։ — Փառք Հօր ։ Վասն որոյ եւ մեք ըզքանկտեղիս մեր յարմարեսցուք քեզ հոգեւորական տաղաւար որպէս միայնոյ մարդասիրի եւ փըրկչի ։

— Այժմ եւ միշտ ։ Լուսաւորեալք ի յերկրի պայծառացեալք ի յերկինս եւ դասակցեալք ընդ հրեշտակս. եկայք ժողովուրդք ցընծութեամբ տօնեսցուք ։

## ԴԿ

Ի յիշատակըս վըկայից քոց Քրիստոս պարգեւեա մեզ. շընորհել ըզքեզ արժանապէս ։ Կամաւ մատուցին զանձինս իւրեանց քեզ պատարագ արեամբն իւրեանց եւ ակն ունին պըսակել ի քէն Տէր ։ Սոցա աղօթիւք Փըրկիչ խնայեա ի սուրբ եկեղեցի քո զոր ըստացար պատուական արեամբըդ քո սրբոյ ։

Այսօր յիշատակ սրբոց քոց. զորք տանջանաց անօրինացըն համբերեցին եւ դասակից եղեն վերին զըւարթնոցն ։ Այսօր եւ հրեշտակք ուրախանան. ընդ կամաւոր չարչարանըս ճըգնաւորացն որք յաղթեցին անօրէն բըռնաւորացն ։ Սուրբ ես Թագաւոր յաւիտենից. որ նըստիս ի վերայ չորեքկերպեան կենդանեաց եւ ի սրբոց քոց փառաւորանիս ։

Փառըք քեզ Հայր երկնաւոր. որ նըստիս ի քրովբէս. եւ բարեբանիս ի դասուց սերովբէից ։ Ըզքեզ

գովեմըք Թագաւոր փառաց Քրիստոս համաձայնեալ ընդ ուրբըս քո յեկեղեցիս արդարոց ։ Սերբեա զանձինըս մեր եւ տաճարացո սուրբ Երրորդութեանդ կենդանարար սուրբ Հոգի ։

Պարծեցին սուրբքըն փառօք եւ ցընծասցեն ի հանգիստս իւրեանց․ քանզի ընդ հուր եւ ընդ ջուր անցուցին զմարմինս իւրեանց ։ Սուրբք զարիւնս իւրեանց հեղին չարչարանացըն համբերեցին․ եւ զըսպառնալիս բըռնաւորաց անարգեցին յաշխարհի ։ Արդ եկայք հաւատացեալք կատարեսցուք ըզյիշատակ սոցա․ քանզի սոքա են մեզ բարեխօսք յարքայութեանն Աստուծոյ ։

Աչ Տեառն ի վերայ սըրբոց իւրոց․ եւ փառք իւր հանգուցեալ է յոսկերըս սոցա․ եւ հոգիք սոցա ու դասաւորեալ ընդ հրեշտակս ի յերկինս ։ Բանականք հրեշտակաց Տեառըն շուրջ են զնոքօք․ եւ երգակից են միմեանց յօրհնութիւնս Աստուծոյ․ եւ հայցեն միաբանքն զխաղաղութիւն ամենայն աշխարհի ։

ԲՆ․ ՀՐՆ․ Այսօր ուրախացեալ սուրբ եկեղեցի Քրիստոսի․ տօնէ խընդութեամբ զտօն վերինն Երուսաղէմի․ ‖ սըրբասաց ձայնիւ փառաւորելով ըզՔրիստոս ։ Այսօր համաձայնեալ որդիք Սիօնի երկրայնոյ․ տօնիւ զուարճանան որդւոց անդրանկաց վերին Սիօնի․ սըրբասաց ։ Այսօր դասք անմարմնոցն երգս առեալ պարեն ընդ մարդկան․ զերգըս հոգեւորս յանման փեսային յառագաստ․ սըրբասաց ։

ԳՆ․ ՄՐԳ․ Այսօր ցընծայ զուարճացեալ եկեղեցի Հեթանոսաց․ տօնելով զյիշատակ մեծի նահապետին եւ հօրըն հաւատոյ Աբրահամու․ օրհնեցէք մանկունք Սիօնի զհայրըն լուսոյ անլըռելի ։ Այսօր նոր Իսրայէլ․ կոչեցեալ մարգարէիւքն առ Աստուած․ տօնեա ցընծութեամբ ըզտօն հաւուցն Իսրայէլին առաջնոյ․

# ՀԱՐՑՔ
# ՄԱՐՏԻՐՈՍԱՑ



### ՀԱՐՑ ԱՁ

ԸԶՔԵԶ արդար և ուղիղ դատաւոր ի մէջ սրբոց քոց բարեբանելիս. || հարցըն մերոց Աստուած օրհնեալ ես յաւիտեան։ Ըզքեզ որ ի հնոցն իջեր պատանեկն. խոնարհեալ ի գունդըս մարտիրոսաց գովելիս. հարցըն։ Ըզքեզ որ ահաւոր թագաւոր յաւիտենից. այսօր ընդ դասս վըկայից քոց բարեբանեմք. հարցըն։ ԸզՏէր օրհնեցէք || բարձր արարէք ըզնա յաւիտեան։ Անբաւելին երկնից և հրեղինաց. ի հողեղինաց հաճեցաւ ընտրել իւր զինուորս. բարձր։ Ուստի և մեք հաւատացեալքըս Քրիստոսի Աստուծոյ. ընդ նոսին խընդրելով ըզթողութիւն մեղաց մերոց. բարձր։

### ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԱՁ

Ցանձաւ փառաց խոնարհեցար ի մեր բընութիւնս. Բանդ Աստուած և մարմնացար ի սրբոյ կուսէն։ Եւ ծնար ի սուրբ կուսէ անապական մարմնով. ըզքեզ անդադար բարեբանեալ մեծացուցանեմք։ Այսօր գեկեալըդ ի փրկութիւն ազգի մարդկան. միաբանութեամբ ամենեքեան մեծացուցանեմք։

### ՈՂՈՐՄԵԱ ԱՁ

Ժողովեալքս ի յիշատակ սրբոց քոց Քրիստոս. աղաչեմք ըզքեզ || սոցա բարեխօսութեամբ ողորմեա։ Երկրպագեմք առաջի բեմի քո Քրիստոս. ընկալ քո գըթութեամբդ զաղաչանըս մեր. սոցա։ Զօրս հոգւով և մարմնով որպէս զանմարմինն. անարատ ի գալուստ քո պահեսցես մարդասէր Փրկիչ. սոցա։

Digitized by Google

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԱՁ

Ա. Ժողովեալք ի յիշատակ սրբոց մարտիրոսացն. միաբանութեամբ երգելով. || օրհնութիւն ի բարձունս երկնաւոր Թագաւորին: Քանզի հեղմամբ արեան սոցա պարտեցաւ Թշնամին. եւ մեծարեալ պարծի Սիոն երգելով. օրհնութիւն: Դասակցելոցն ընդ զօրս վերին զուարթնոցն. յիշատակաւ բերկրեալ ի սրբութիւն սոցա երգեսցուք. օրհնութիւն:

Բ. Որք ըղհանդէս նահատակութեան առ բռնաւորսն ցուցին. եւ յաղթեցին հաւատով նորբեակ լուսոյն եղեն մեզ առիթ. || աղաչանօք սոցա կեցո ըղմեզ: Որք ըղխաւար կռապաշտութեանցն վանեալ հերքեցին. եւ կանգնեցին մեզ նշան յաղթող ընդդէմ թշնամւոյն. աղաչանօք: Եւ հրաշափառ ճգնութեամբ պատերազմեալք ի յերկրի վերհամբարձեալք երկնայնոց դասուցն եղեն երգակից. աղաչանօք:

Գ. Որք զանձինս իւրեանց քեզ Հայր ընծայեցին. և Որդւոյ քում Քրիստոսի եղեն խաչակից. || աղաչանօք սոցա կեցո ըղմեզ: Որք ըղմարմինս իւրեանց քեզ տաճար մաքրեցին. եւ Հոգւոյդ սրբոյ եղեն օթեվան. աղաչանօք: Որք ըղկեանս իւրեանց քեզ փոխանակեցին. եւ երկնից արքայութեանդ եղեն ժառանգորդ. աղաչանօք:

Դ. Պատուական վըկայից զինուորութեանցըն դասքն. համաձայնեալ ընդ երկնային զօրսն երգեն ասելով. || սուրբ ես Տէր զօրութեանց բնակեալդ ի լոյս: Կարծրագոյն տանջանօք լուծին ըղկամս մարմնոյ. եւ բացարձակ փայլմամբ հոգւով երգեն ասելով. սուրբ: Համաձայնեալ ընդ նոսին արժանաւոր սիրով. ի տաճարի ճըգնաւորացն երգեմք ասելով. սուրբ:

Ե. Առաքինասէր վարուք հաճոյացան սուրբ վկայքն. եւ ընտրեցան կամաւոր մահուամբն իւրեանց. || եւ հրաւիրեցան ի կոչումն արքայութեան երկնից։ Որք մատնեցին զանձինս իւրեանց ի փորձ սրոյ եւ հրոյ. եւ հեղմամբ արեանն իւրեանց եղեն վկայք Քրիստոսի. եւ հրաւիրեցան։ Աղօթիւք սոցա և բարեխօսութեամբ. պարգեւեա մեզ Քրիստոս մասն և բաժին. ընդ հրաւիրեալսն ի կոչումն արքայութեան երկնից։

Ա. ՀԱՐՑ ԱԿ

Սուրբ Աստուած արարիչ յաւիտենից. որ նստիս ի քերովբէս խնամեա յարարածս քո. || Աստուած հարցն մերոց։ Սուրբ Աստուած թագաւորդ մեր Քրիստոս. որ իջեր ի Հօրէ եւ մարմնացար ի սրբոյ կուսէն. Աստուած։ Սուրբ Աստուած որ աղբիւրդ ես անսպառ. լցուցեր զմարգարէսն և զառաքեալսն աւետարանել զքեզ. Աստուած։

Գ. Հայր անսկիզբն որ խնամես զքո զարարածս. || գործովք քո զքեզ օրհնեն եւ առաւել բարձրացուցանեն զահաւոր անուն քո սուրբ։ Որդիդ միածին. էակից Հօր և Հոգւոյ. գործովք։ Հոգիդ ճշմարիտ. փառակից Հօր և Որդւոյ. գործովք։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԱԿ

Ուրախ լեր Աստուածածին. տաճար անխախտելի զքեզ մեծացուցանեմք։ Ցնծացար անարատաբար. եւ զԱստուած վայելչապէս ծնար. ուրախ։ Երգէ մարգարէն սուրբ է տաճար քո սքանչելի արդարութեամբ եւ դուռն երկնային ուրախ։

ՈՂՈՐՄՆԱ ԱԿ

Խնդրեմք ի քէն բարերար. ողորմեա անձանց մերոց։ Վասն սրբոց քոց մարտիրոսաց. Տէր ընկալ զաղաչանս մեր։ Որ գթած ես յամենայնի Տէր

Digitized by Google

կեցո՛ զանձինս մեր ։ Սուրբ ես Տէր զօրութեանց բնակեալդ ի լոյս յանմատոյց · ճգնութեամբ սրբոց քոց լուր Տէր եւ ողորմեա ։

### ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԱԿ

Յամենայն ժամ օրհնեմք զքեզ · որ մարդասէրդ ես կեցո՛ զմեզ ։ Յօրհնութիւն ի նոր օրհնեսցուք զՏէր · զի նա է փառաւորեալ · յամենայն սրբոց իւրոց ։ Օրհնեալ է այն որ արժանի արար զմեզ · հասանել ի մասն ժառանգութեան սրբոցն ի լոյս ։

### Բ · ՀԱՐՑ ԱԿ

Որ բարձրեալդ ես և ի սուրբս հանգուցեալ · Զքեզ բարեբանեմք Աստուած հարցն մերոց ։ Որ զսիրելիս քո զերիս մանկունսն · անապական պահեցեր ի հրոյն · զքեզ ։ Որ ցուցեր զզօրութիւն աստուածութեանդ քո · չար և անօրէն թագաւորին · զք ։

Գ · ԶՏէր օրհնեցէք և բարձր արարէք զնա յաւիտեան ։ Որք մատնեցին զանձինս իւրեանց տանջանաց · և դասակից եղեն վերին զուարթնոցն · ընդ նոսին զՏէր օրհնեցէք ։ Ընդ կամաւոր չարչարանս սրբոց վկայիցն քահանայք և ժողովուրդք · բարեբանեցէք զանմահ թագաւորն զՔրիստոս և բարձր ։

### ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԱԿ

Անարատ տաճար բնակարան անեղ Բանին Աստուծոյ · Մարիամ սուրբ կուսդ զքեզ և զծնեալն ի քէն մեծացուցանեմք ։ Յարգանդի կրեցեր որ յառաջ քան զյաւիտեանս ի Հօրէ զԲանն · և ծնար մարմնով · զքեզ ։ Արդ խնդրեմք ի քէն անդադար բարեխօսել վասն անձանց մերոց · առ Որդին քո միածին փրկել զմեզ ի փորձութենէ և յամենայն վտանգից մերոց ։

ՈՂՈՐՄԵԱ ԱԿ

Ըզյիշատակ սըրբոց մարտիրոսացն. այսօր տօնէ եկեղեցի հըռչակելով ըզճըգնութիւն սոցա Հայր երկնաւոր. || աղօթիւք սոցա ողորմեա: Հրաշազարդ և պայծառ առաքինութեամբ քարոզեցին ըզքեզ տիեզերաց. քանզի իջեր ի Հօրէ և մարմնացար ի սըրբոյ կուսէն Որդի միածին. աղօթիւք: Անուշահոտ բուրմամբըդ քո լըցին ըզտիեզերըս կենսաբեր աւետեօք. եւ ընդ վերին դասակարգութիւնսըն համաձայնեալ բարեբանեն ըզքեզ Հոգի ճըշմարիտ. աղօթիւք:

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԱԿ

Ա. Զօրութիւնք երկնայինք եւ անմարմնոց զինուորութիւնք. օրհնեն ըզքեզ || ասելով սուրբ Աստըւած: Եկեղեցիք արդարոց և ժողովք մարտիրոսաց. գովեն ըզքեզ ասելով: Ազգ մարդկան կենդանեաց սաղմոսիւք եւ օրհնութեամբ. աղաղակեն ասելով:

Բ. Ճըգնաւորըք Քրիստոսի հեղմամբ արեան ձերոյ զկռապաշտութիւն բարձէք յաշխարհէ. եւ ի ճանապարհս արդարութեան դարձուցէք ըզմոլորեալս: Ճըշմարտութեան քարոզք եւ լուսաւորիչըք տիեզերաց էք պարծանք եկեղեցւոյ. և յոյս հաւատացելոց: Համբերութեամբ ձերով ընկալայք ի Քրիստոսէ ըզպըսակս անապական. եւ դասաւորեցայք ի յերկինս ընդ անմարմնոցըն դասս:

Գ. Յաղթող նահատակքըն Քրիստոսի որք քաջութեամբ մարտեան ընդ թըշնամւոյն եւ զբըռնութիւն լուծին ըզտանջանաց. զի զանտանելի ըզվէրսն ի յանձն առին: Լոյս փառաց փարէր ըզնոքօք. եւ հրեշտակք ի յերկինս ուրախանան զի կարապետք եղեն տիեզերաց. եւ լըւացողք մեղաւորաց: Դասք անմարմնոցն աղաղակեն եւ

ասեն . փութացարուք ընդհետ կոչմանըն Քրիստոսի եւ խընկազգեացք վայելեցէք . յաւիտենից ի յարքայութեանն ։

Դ . Պարծանք հաւատոյ սուրբ ճգնաւորաց . որք ըզմարմինս իւրեանց ի վերայ քո պատարագեցին . եւ հեղմամբ արեանն իւրեանց նորոգեցին զաշխարհս ։ Պսակաւորեալք ընդ անմարմնոց բազմութեանըն փայլեն որպէս զարեգակն ի մէջ աստեղաց . զի զհոգիս մարդկան լուսաւորեցին աւազանին լուսով ։ Արդ եկայք ժողովուրդք Աստուծոյ եւ հաւատացեալք Քրիստոսի . ի ձեռըն սըրբոց մարտիրոսացն ասասցուք գոհութեամբ փառք ի բարձունս Աստուծոյ ։

Ա . ՀԱՐՑ ԲԶ

Անոխակալ եւ բարեգութ . մի ցրեր զուխտըս քո մի մերժեր ըզմեզ յողորմութենէ քումմէ . ‖ Տէր Աստուած հարցըն մերոց ։ Նախաստեղծին այցող փըրկիչ . փըրկեա զմեզ յարժանահաս նեղչաց մերոց . վասն ընտրելոց քոց սըրբոց . Տէր ։ Առաւել փառաւորեալ ի տաճարի սըրբոց քոց վըկայից . մի անտես առներ զապաւինեալըս ի քեզ . Տէր ։

Գ . Ըզտէր օրհնեցէք ‖ եւ բարձր արարէք ընդ յաւիտեան ։ Ընդ արբեցելոցն ի հնոցին երգակցելով գոչեսցուք . օրհնեցէք ամենայն գործք Տեառն ըզՏէր . եւ բարձր ։ Ի վկայարանըս սըրբոց քոց ընթացուք աւետելով . առժանաւորեա եւ ըզմեզ հասանել Քրիստոս մասին ժառանգութեան սըրբոցն ի լոյս . եւ առաւել բարձրասցի անուն քո միայն յաւիտեան ։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԲԶ

Սուրբ եւ Աստուածածին Մարիամ ցանկալի կուսից և պարծանք ազգի մարդկան . մայր և աղախին մե-

ծացուցանեմք։ Անկէզ մորենի և տաճար ընդհանուր լուսոյն. անարատ և անխախտելի կուսութիւն. ‖ մայր և աղախին մեծացուցանեմք։ Խորհուրդ կենաց եւ մայր կենդանութեան և առագաստ հրափայլ ծագմամբ մայր։

ՈՂՈՐՄԵԱ ԲՁ

Հեղմամբ արեան սըրբոց վըկայից. ‖ հաշտեաց ընդ մեզ Քրիստոս եւ փըրկեա յամենայն փորձութենէ։ Որք նահատակեցան վասըն քո ի մահ. վիրաւորեալք յաղթեցին թըշնամւոյն. սոցին աղաչանօք հաշտեաց։ Որք միացան ի սէր անհաւոր քո տէրութեանդ. եւ մատուցին զանձինս իւրեանց պատարագ քեզ և զենումն. սոցին աղաչանօք հաշտեաց։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԲՁ

Օրհնեն ըզքեզ Աստուած. զօրք ամենայն հրեշտակաց. արդարոց անձինք եւ հոգիք ամենայն սըրբոց։ Գովեն ըզքեզ Քրիստոս. մարտիրոսացըն ժողովք. դասք մարգարէից եւ գունդք ամենայն սըրբոց։ Բարեբանեն ըզքեզ սուրբ Հոգի. որ միայնդ ես հըզօր. եւ պահես զօրացեալ զյուսացեալս ի քեզ։

Բ. ՀԱՐՑ ԲՁ

Ընդ սուրբըս քո բարեբանեմք ‖ ըզքեզ Քրիստոս Աստուած հարցըն մերոց։ Որք խաչակից քեզ գոլով յօժարութեամբ յանձն առին ըզդըժընդակ տանջանս. ընդ նոսին օրհնեմք ըզքեզ։ Որք մեռան ընդ քեզ և կենդանացան. եւ թագաւորեալք վայելեսցեն ի քո փառս. ընդ նոսին կենագործեա ըզմեզ Քրիստոս։

Գ. ԸզՏէր ‖ օրհնեցէք գովեցէք և բարձր արարէք ըզնա յաւիտեան։ Որ սըրբոցն է բնակարան և ի սուրբըս հանգուցեալ. օրհնեցէք։ Որ նըստի ընդ աջմէ

հօր եւ բարեբանի ի դասուց մարտիրոսաց ամենե-
քեան միաբան . օրհնեցէք ։

### ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԲԶ

Զքեզ Հայր յանաւէ քան զյաւիտեանս բարեբանեն դասք անմարմնոց հրեշտակաց . ձայնիւ երգով գոչեն և մաղաղակեն . Աստուած աստուծոց և Տէր տերանց փրկիչ գոլով ։ Առաքեցեր զքո Միածինդ մարմնանալ ի սուրբ կուսէն . եւ անարատ ծննդեամբ յորովայնէ մնացական . բառնալով ըզմեր նեղութիւնս . Աստ ։ Ծնորհք բարի յերուսաղէմ երեւեցաւ հեթանոսաց . զի արարիչն յաւիտենից տեղայ եղեալ յորդեգրութիւն կենաց կոչէ . Աստուած ։

### ՈՂՈՐՄԵԱ ԲԶ

Աղբիւր կենաց Աստուած և բղխումն ողորմութեան . խնդրեմք ի քէն ըզթողութիւն մեղաց . որ միայնդ ես մարդասէր ։ Փափագանօք մերձենամք առ սուրբս քո . հաշտեաց ընդ մեզ սրտիւն բարեխօսութեամբ . որ ։ Որ ապաւէնդ ես կենաց և փրկութեան մերոյ խաղաղացո ըզկեանս մեր երկնային քո խաղաղութեամբդ . որ ։

### ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԲԶ

Ա . Տօն ծնընդաւուրացն այսօր Եկայք հաւատացեալք . օրհնեցէք զԱստուած յիշատակի սուրբ վկայիցն . Որք ըզմահս բիւրեանց կանգնեցին յերկրի աշտարակ հըզօր . յոր ապաւինեալքս ամենեքեան . Եկայք ։ Հեղումն արեան սոցա մաքրեաց ըզտիեզերս յանօրէն կռապաշտութեանց եւ խառնեաց ըզմարդիկ ընդ երկնայինն զօրութիւնս . Եկայք հաւատացեալք . օրհնեցէք զԱստըւած ըզպսակեալն ի մէջ սրբոց ։

Բ . Որ օրհնիս յանմարմնական զինուորութեանց վերագոչեմք առ քեզ Տէր . աղօթիւք սրբոց մարտիրոսաց

խնայեա ի ժողովուրդըս քո միայն մարդասէր ։ Զորս ընտրեցեր յամենայն ազգաց երկրէ լուսաւորել զոգիս մարդկան. աղօթիւք սըրբոց մարտիրոսաց խնայեա ի ժողովուրդըս քո միայն մարդասէր ։ Որ զաս հայրական իշխանութեամբ պըսակել ըզսուրբըս քո. աղօթիւք սըրբոց մարտիրոսաց. փըրկեա ըզմեզ ի հրոյն յաւիտենից միայն մարդասէր ։

Գ. Զքեզ Տէր օրհնեն դասք սըրբոց մարտիրոսաց. քաղցըր ձայնիւ հընչմամբ քեզ երգեն. փառըք քեզ փառըք քեզ Աստուած ։ Որք քաջութեամբ համբերեցին բըռնաւորացն ըսպառնալեաց. եւ ընդ անմարմնոցըն դասակցեալ քեզ երգեն. փառըք քեզ փառըք քեզ Աստուած ։ Այսօր ցընծայ վերին Երուսաղէմ. ընդունելով ըզսուրբս յարկսըն լուսեղէն. ուրախանան եւ հրեշտակք անսելով. փառըք քեզ փառըք քեզ Աստուած ։

Ա. ՀԱՐՑ ԲԿ

Օրհնեմք ըզքեզ Տէր անըսկիզբըն Հայր ‖ Աստուած հարցըն մերոց ։ Գովեմք ըզքեզ Տէր. միածին Որդի Աստուած ։ Բարեբանեմք ըզքեզ Տէր. ճըշմարիտ սուրբ Հոգի Աստուած ։

Գ. ԸզՏէր օրհնեցէք ‖ բարձր արարէք յաւիտեան ։ Զոր փառաբանեն զօրք երկնաւորաց զըւարթնոցըն բարձր ։ Որում երկըրպագեն դասք հողեղինաց սըրբոց վըկայիցըն բարձր ։

ՄԵԾԱՑՈՒՑԷ ԲԿ

Ըզքեզ Աստուածածին որ վերօրհնիս ի զօրաց հրեշտակաց. ‖ ազգ մարդկան կենդանեաց մեծացուցանեմք ։ Ըզքեզ բնակ հրեղէն աստուածութեանն յիմանալի զօրացն երանեալ. ազգ ։ Ըզքեզ մայր Էմմանուէլի մարգարէին յառաջ գուշակեալ. ազգ ։

### ՈՂՈՐՄԵԱ ԲԿ

Եկեալ եմք ի տեղի վըկայիցն և աղաչեմք ըզքեզ Աստուած ողորմեա։ Զաղաչանըս մեր մի՛ անտես առնե՛ր. ‖ բարեխօսութեամբ սըրբոց քոց և ողորմեա։ Փրկեա զմեզ յարենէ և ի նեղչաց մերոց. բարե։

### ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԲԿ

Շնորհեա մեզ Քրիստոս թագաւոր. կատարել ի հաճոյս քո զյիշատակ սըրբոցն եւ օրհնել զանուն քո սուրբ։ Որք հեղման քո սուրբ արեան. և չարչարանաց քոց եղեն հաղորդ սուրբ վըկայքն եւ լուսաւորիչք աշխարհի։ Սոքօք միշտ աղաչեմք և փառաւորեմք անդադար. երգով օրհնութեամբ սուրբ զԵրրորդութիւնդ համագոյ։

### Բ. ՀԱՐՑ ԲԿ

Որք ի մարտի անօրինացըն յաղթեցին արիաբար թըշնամւոյն. ‖ աղաչանօք սոցա կեցո ըզմեզ Փըրկիչ Աստուած հարցըն մերոց։ Որք վասըն քո ըզկեանս իւրեանց փոխանակեցին. սոսկալապէս համբերելով. աղաչանօք։ Ուստի և մեք հաւատացեալքըս ժողովեալքս ի յիշատակ սըրբոցն հայցեմք. աղաչանօք։

Գ. Ըզտէր ‖ օրհնեցէք և բարձր արարէք ըզնա յաւիտեան։ Ընդ երկնային զինուորութիւնսն ըզթագաւորըն Քրիստոս. գովելով օրհնեցէք։ Ընդ դասս երանելի վըկայիցն ըզպըսակիչըն սըրբոց. բարեբանելով օրհնեցէք։

### ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԲԿ

Մայր լուսոյն. Մարիամ անհարսնացեալ օրհնեալ դու ի կանայս։ Զլոյսն անստուեր. յարգանդի կրեցեր օրհնեալ դու ի կանայս։ Մի՛ դադարեր վասըն մեր բարեխօսել օրհնեալ դու ի կանայս։

## ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԳԶ

Աստուածածին երկնային դուռն աստուածային ծնը-նիւն աւետարանէր հրեշտակն. ‖ ուրախ լեր բերկրեալդ Տէր ընդ քեզ. Ի քերովբէս բազմեալ ընդ Հօր անմա-կանաբար բնակել հաճեցաւ ի քում յորովայնի. ուրախ: Որ բոցեղէն սրովբէիւք շըրջափակեալ պաշտիւր. այսօր ի մէջ մարդկան ի գիրկս հողեղինի յայտնեալ ուր:

## ՈՂՈՐՄԵԱ ԳԶ

Որք ի մարմնի զանմարմնականացն բերելով արու-թիւն հաւատոյ. պատերազմեցան ընդդէմ թշնամւոյն քո ‖ ճշմարիտ վկայքն. բարեխօսութեամբ սոցա Քրիս-տոս ողորմեա մեզ: Որք ըզսպառնալիս բռնաւորաց. մահուամբ սրոյ և հրոյ համբերութեամբ յանձն առին. յաղթեցին առաքինաբար քո ճշմարիտ: Որք ի զօրաց երկրաւորաց զինուորեալ քեզ երկնաւոր թագաւո-րիդ. դասակարգեցան ընդ հրեշտակս ի յերկինս քո ճշմարիտ:

## ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԳԶ

Զարիական մահ սըրբոց քոց Քրիստոս ընդ երկնային զօրսն այսօր երգակցեալ տօնեմք. որք հանդիսացան ընդդէմ բռնութեան թշնամւոյն: Անմարմինք ի մարմնի ցուցան զեր ի վերոյ սրոյ և հրոյ տանջանաց. զպատուական մահս իւրեանց ընծայեցին քեզ Քրիս-տոս բանաւոր զենմունք: Նահատակեալքս ճգնու-թեամբ ի փորձ զանազան տանջանաց. համբերութեամբ վանեալ ըզթշնամւոյն պատերազմ. փոխեցան ի զօրս վերին զուարթնոցն:

## Բ. ՀԱՐՑ ԳԶ

Որ զանչափ քո զբարերարութիւնըդ շնորհեցեր քո արարածոցս բարեգութ Աստուած. ‖ զքեզ բարեբանեմք

Աստուած հարցն մերոց։ Որ ի ձեռն երանելի հայրապետաց բարձեր զխաւար կռապաշտութեան յազգէ մարդկան. զքեզ։ Այսօր եւ մանկունք սուրբ եկեղեցւոյ. ընդ սերովբէսն եւ ընդ քերովբէսն երգաբանեն բերկրական ձայնիւ. զքեզ։

Գ. ԸզՏէր ‖ օրհնեցէք եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան։ Որք անցուցին զմարմինս իւրեանց ընդ հուր եւ ընդ սուր. եւ դասակից եղեն վերին զօրացն. ըզՏէր օրհ։ Քահանայք եւ պաշտօնեայք համբերնական ձայնիւն ըզՏէր օրհ։

ՄՆԾԱՑՈՒՍՑԷ ԳԶ

Զանճառելի լուսոյ մայր. եւ ըզբնակայ րան անըսկըզբնակից Որդւոյն. ‖ օրհնութեամբ մեծացուցանեմք։ Զանհաս տնօրէնութեան մայր. եւ զանձնաւոր տաճար Աստուծոյ Բանին. օրհնութեամբ։ Զըլորից փրկութեան մայր. որ զանտանելին յէից ի յարգանդի եբարձ. ըզնա ամենեքեան օրհնութեամբ։

ՈՂՈՐՄՆԱ ԳԶ

Զանմարմնոցն ըզմաքրութիւնըն մարմնական կրեալք. արեալ ի յանձինս իւրեանց քաջ եւ յաղթող երանեալ սուրբ հայրապետք. ‖ սոցա բարեխօսութեամբ ողորմեա մեզ Աստուած։ Շընորհազարդ եւ պայծառ առաքինութեամբ. հերքեցին զիշխանն անօրէն իւրեանց գործակցօք ճըգնող հայրապետք. սոցա։ Հրեշտակք երկնից փափագէին հանդիսի կատարման սոցա. որք ի մահուան իւրեանց կենդանացան. ելին ի կամարն երկնից խառնեցան ի գունդ զուարթնոցն. սոցա։

ՏԷՐ ՅՆՐԿՆԻՑ ԳԶ

Ա. Երանելի սուրբ հայրապետք. չարչարեալք վասն Տեառն համբերեցէք. յաղթելով բռնաւորին դասակից

սօր ճգնազգեաց սրբոց դասքն ի յերկրի պսակեցան երկնային աստուածեղէն փառօք։ Այսօր անմարմնոց զինուորութիւնքն մեծապէս տօնեն. քանզի երկրաւոր զինուորաց բազմութիւնքն ընծայեցան ի խորան[illegible]ն սրբութեան երկնից։

Բ. Սուրբ Աստուած Հայր անսկիզբն. որ փառաւորեալդ ես ի մէջ սրբոց քոց. օրհնեմք ‖ զքեզ ընդ զուարթունս երկնից։ Սուրբ Աստուած Որդիդ միածին. որ պահեցեր յաղթող զճգնութիւն սրբոց քոց. գովեմք զքեզ։ Սուրբ Աստուած Հոգիդ ճշմարիտ. որ նորոգեցեր զտիեզերս ճշմարիտ երկրպագութեամբ սուրբ Երրորդութեանդ. բարեբանեմք զքեզ անլռելի ձայնիւ։

Գ. Ճգնաւորական աշխատութեանց համբերեցին սուրբ մարտիրոսքն. եւ զպատերազմն չարին վանեցին ժուժկալութեամբ. ‖ բարեխօսութեամբ սոցա Քրիստոս խնայեա ի մեզ։ Որք հեղին զարիւնս իւրեանց փոխանակ արեան քո Տէր. եւ զբռնութիւն հրապուրողին վանեցին ժուժկալութեամբ. բարե։ Եւ զպսակ անապականն ընկալան ի քէն Քրիստոս. եւ դասաւորեցան ի դասս վերին զուարթնոցն. բարե։

Դ. Նահատակք յաղթողք քաջք ի մարտի. երանելի սուրբ մարտիրոսք. ‖ որք վանեալ զթշնամին խորտակեցէք։ Հրեշտակացն դասքն տօնակից են մեզ. եւ ջոկք աթոռոյն ը զուարճացեալ բերկրին. ընդ վարդագոյն ձեր հեղումն արեան. որք։ Անթառամ պսակն ձեզ աւանդեալ մնայ. քան զականս պատուականս գերագոյն հրաշիւք. որք։

Ե. Այսօր մարտիրոսաց դասքն. ցնծացեալ բերկրին ընդ առաջ Տեառն. Քրիստոսի Որդւոյն Աստուծոյ։

Digitized by Google

Ձայն ի յերկնից վըկայեալ · ասէ եկայք օրհնեալըք Հօր իմոյ · ժառանգորդք երկնից խորանացն ։ Լըցէք ըզտեղի անկելոցն · ապըստամբողական թըշնամւոյն որ ի յերկնից վայր անկեալ ։

Ա· ՀԱՐՑ Դ·Ձ

Յուսացեալքն յանուն քո սուրբ · պատերազմեալք յաղթեցին թըշնամւոյն || սոցին աղաչանօք խընայեա ի մեզ Աստուած հարցըն մերոց ։ Որք կամաւն իւրեանց անցին ընդ հուր և ընդ սուր · եւ դասակիցք եղեն վերին զըւարթնոցն · սոցին ։ Արդ խընդրեմք ի քէն թագաւոր փառաց · աղաչանօք սըրբոց վըկայիցըն խընայեա ։

Գ· Եցէք ի վերնական զօրութենէ քումմէ՝ պատերազմեալք յաղթեցին թըշնամւոյն և դասակցեալք վերին զօրացն · || օրհնեն ըզքեզ զովեն եւ փառաւորեն ։ Եւ քաջութեամբ արիաբար ճըգնեալ · արհամարհելով զչար տանջանս և ըզմահ · եւ ձայնակցեալ երից մանկանցն օրհնեն ։ Ուստի եւ մեք հաւատացեալքս ի քեզ · կատարեցուք ըզյիշատակ սըրբոց վըկայիցն և ընդ նոսին համաձայնեալք օրհնեմք ըզքեզ զովեմք եւ փառաւորեմք ։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ Դ·Ձ

Ըզքեզ օրհնութեամբ մեծացուցանեմք ։ Որ ըզԲանն Աստուած յարգանդի կրեցեր սըրբուհի անարատ · եւ անճառապէս ծընար ըզվերաձգողն երկնից · ըզքեզ ։ Որ էից լուսոյն արժանի եղեր բանալոյ ի քո գիրկս · եւ արեգականն արդարութեան եղեր արեւելք · ըզքեզ ։

ՈՂՈՐՄԵԱ Դ·Ձ

Որք ըզբաժակ մահու ընդ քեզ արբին · եւ մըկըրտութեամբ արեան ընդ քեզ մըկըրտեցան սոքօք աղաչեմք ողորմեա ։ Որք և ըզխաչս իւրեանց բարձին

ըզկնի քո. եւ անմեկնելի սիրով ընդ քեզ խաչակցեցան. || սոքօք աղաչեմք ողորմեա։ Որք հսկապէս չիջուցին զպատրանկեալ փայլակն. եւ հրեշտակացեալք ի դասս նորոյն վերակարգեցան. սոքօք։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԴՁ

Այսօր յիշատակ սըրբոցն և փայլեն նըշխարըք սոցա ի մէջ եկեղեցւոյ || աղաչեսցուք ըզՏէր. սոքօք խընայեա ի մեզ։ Հեղմամբ արեան սոցա մեծարի մայր սոցա իմանալի Սիոն աղաչեսցուք։ Տաճար են սուրբ Հոգւոյն կենդանի ոսկերըք սոցա հիւանդաց բըժիշկ աղաչեսցուք։

Բ. ՀԱՐՑ ԴՁ

Սուրբ ես Տէր զօրութեանց. որ յանմարմնական զօրացըդ գովիս սրբասաց ձայնիւ || ըզքեզ օրհնեմք Աստուած հարցըն մերոց։ Որ ետուր զօրութիւն մարդասէր քոց ճըգնաւորացըն յաղթել չարին ընդդիմամարտութեան ըզքեզ։ Ընկալ այսօր զբարեխօսութիւն. քաջ նահատակաց քոց վըկայիցն ողորմելով տօնողացս զյիշատակ սոցա. ըզքեզ։

Գ. ԸզՏէր || օրհնեցէք եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան։ Ընդ երկնային զօրսըն միաձայնելով. ըզպըսակիչըն սրբոց. բարեբանելով օրհ։ Զբերկրեալն այսօր ի յիշատակի. քաջ եւ յաղթող սուրբ երանելեացն օրհ։

ՄՆԾԱՑՈՒՍՑԷ ԴՁ

Անարատ կոյս Աստուածածին Մարիամ սըրբուհի և մայր Քրիստոսի. յարգանդի տարար զանտանելին ամենեցուն. || օրհնութեամբ ըզքեզ Աստուածածին. մեծացուցանեմք։ Ըզքեզ երկնային դուռըն զոր ետեսն Եզեկիէլ. եւ սարըն զոր ծանեաւ Գեդէոն. սերովբէ հողեղէն վեհագոյն քերովբէից. օրհնութեամբ։

Երկս խորհուրդըս սոսկալիս ի քեզ տեսանի Աստուածածին. յղութիւն անսերմնական ծնունդ անճառ. կուսութիւն յետ ծընընդեան մնալով անապական. օրհնութեամբ:

ՈՂՈՐՄԵԱ ԴՁ

Ըզքեզ սիրողաց Որդի Աստուծոյ պատուելով ըզյիշատակս արժանի արա և || աղօթիւք սոցա ողորմեա մեզ: Որք փորձեցան ի փորձ սրոյ և հրոյ. և ի քո պատուիրանաց երբեք ոչ խոտորեցան. աղօթիւք: Եդեն տաճար սըրբութեան անմահ բանիդ. եւ ըզգանձըս հոգեւորս աստանօր պատրաստեցին. աղօթիւք:

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԴՁ

Այսօր ճըգնութեամբ սըրբոցն ը զուարճանայ եկեղեցի ուրախութեամբ մեծաւ հանդերձ որդւովք իւրովք. տօնելով զյիշատակ սոցա: Սոքա են դէտ կենաց. պարգեւեալ մեզ ի Քրիստոսէ ի բըժըշկութիւն. պատուական սուրբ արեամբն իւրեանց: Իշխանութիւն ունին ի հոգւոյն սըրբոյ առաջնորդել մեզ յԵրուսաղէմըն վերին. ի քաղաք կենդանեաց ի մեծըն Սիոն:

Գ · ՀԱՐՑ ԴՁ

Որք հաղորդեցան չարչարանաց քոց Քրիստոս սուրբ հայրապետքն. եւ վերաբերեալ պայծառացան ընդ անմարմին բազմութիւնսն. || սոցին աղաչանօք խընայեա ի մեզ Աստըւած հարցըն մերոց: Որք ի սկըզբանէ պատուեալ եղեն ի սէր բոլորից հօրն. եւ ըզտիեզերս հրաւիրեցին յորդեգրութեան շընորհս. սոցին: Որք զընթացս իւրեանց կատարեցին հաճոյիւք քո Քրիստոս. եւ ըզպըսակս անապական ի քէն ընկալան. սոցին:

Գ. Ըզտէր օրհնեցէք բարձր արարէք ըզնա յաւիտեան: Զէակիցըն հօր և հոգւոյն որ բնակեալ է ի

Digitized by Google

լոյս յանմատոյց եւ բարեբանի սրբասաց ձայնիւ. ‖ բարձր արարէք ըզնա յաւիտեանս: Զերկրպագեալն ի սրբոց հայրապետաց. որք հեղմամբ արեան իւրեանց նըմանողք եղեն փրկողին զինքեանըս. բարձր:

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԴՁ

Ուրախացեր Աստուածածին վերօրհնեալդ ի սրովբէից. ծագելով ի քէն մեզ լոյս մայր եղեր վերաձգողին. ‖ ազգ եւ ազինք ըզքեզ մեծացուցանեմք: Հիմն եղեր եկեղեցւոյ խորան եղեր Հոգւոյն սրբոյ. Ի հրեշտակաց սպասաւորեալ Գաբրիէլ քեզ աւետեաց. ազգ: Տեսանեմք ըզսոսկալի զհրաշալի խորհուրդ յայտնեալ. Ի Հոգւոյն սրբոյ յղացեալ զԲանն Աստուած մարմնով ծընար. ազգ:

ՈՂՈՐՄԵԱ ԴՁ

Ողորմեա մեզ Տէր Աստուած մեր. Ի յիշատակի սուրբ հայրապետացն: Որք յանուն քո սուրբ դարձուցին զաշխարհս կռոցն ի պաշտելութենէ. ‖ աղօթիւք սոցա ողորմեա մեզ: Եւ արժանի եղեն ընդունել ի քէն զանթառամ փառաց պսակն. աղօթիւք:

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԴՁ

Ա. Որք զառ ի Քրիստոս զչարչարանըս յանձն առեալ համբերեցէք ով աստուածասէր հայրապետք. եւ արժանի եղէք զերկնայինն առնուլ պսակ: Որք փորձեցայք չիջանուտ հրով ժառանգեցէք պատրաստեալն ձեզ զարքայութիւնն. համարձակութիւն ունիք բարեխօսել առ Տէր վասն անձանց մերոց: Որք զամբարըշտութեանցըն վանեցէք զկռապաշտութիւն ով աստուածասէր հայրապետք. հաստատութիւն ի Քրիստոսէ հայցեցէք անդադար սուրբ եկեղեցւոյ:

Բ. Ցընծութիւն է այսօր հրեշտակաց եւ մարդկան.

զի զխրոխտացեալ ըզթըշնամին վանեալ խորտակեցին սուրբ վըկայքն. եւ եղեն յաղթողք ի պատերազմի ։ Մարմնով և արեամբ մարտեան ընդդէմ զինու. վիրաւորեալք ի մարմնի վիրաւորեցին ի մահ ըզբելիար. եւ առացան պարծանըս յաւիտենական ։ Երանաւետեալք ի հոգեղէն զըւարթնոց. եւ բարեբանեալք ի դասուց մարմնաւորաց սուրբ վըկայքն. անեղին աջովըն պըսակեալ եղեն ։

Գ. Ցնծատօնակ է այսօր քաջ նահատակաց Քրիստոսի սըրբոց վըկայիցն. ‖ եկայք ժողովուրդըք ցընծութեամբ տօնեսցուք ։ Քանզի տեւողք ի տանջանս եւ յաղթողք ի մարտի եւ պըսակեալք ի Հօրէ. եկայք ։ Լուսաւորեալք ի յերկրի պայծառացեալք ի յերկինս և դասակցեալք ընդ հրեշտակս. եկայք ։

## Ա. ՀԱՐՑ ԴԿ

Առ քեզ Աստըւած հարցըն մերոց խոնարհեալ անձամբըք պաղատիմք. ‖ մի անտես առներ Տէր. որ փառաւորեալդ ես յաւիտեան ։ Ցնծեա զուխտն Աբրահամու ըզՍահակայ և զՅակոբայ. եւ զնեղելոց անձանց պաղատանս. մի անտես ։ Շնորհեա Տէր խընդրողացս ի քէն ըզթողութիւն մեղաց. ի տաճարի քում սըրբութեան. բարեխօսութեամբ սըրբոց քոց որ փառաւորեալդ ես յաւիտեան ։

Գ. ԸզՏէր Օրհնեցէք ըզՏէր երկինք և երկնային զօրութիւնք. սերովբէք եւ քերովբէք զԱստըւածն աստուածոց ‖ բարձր արարէք ըզնա յաւիտեան ։ ԸզՏէր Օրհնեցէք ըզՏէր երկիր և որ ի սմա են կենդանիք. համբառնալով ի վեր ըզձայնս. եւ երգովք հոգեւորօք բարձր ։ ԸզՏէր Օրհնեցէք ըզՏէր դասք հրեշտակաց եւ մարդկան. զարարիչն արարածոց միաբանութեամբ երգով բարձր ։

Digitized by Google

### ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԴԿ

Ի քեզ եմք ապաւինեալ || Քրիստոսի մայր Աստուծոյ մերոյ։ Որ քան զերկինս բարձրագոյն Մարիամ. պարծանք եկեղեցւոյ. Քրիստոսի։ Որ քան զարեգակն պայծառագոյն Մարիամ. մի դադարեր բարեխօսել վասն մեր. Քրիստոսի։

### ՈՂՈՐՄԵԱ ԴԿ

Զողորմութեան քո զդուռն բաց մեզ Տէր և արժանի արա ըզմեզ. լուսեղէն յարկացն քոց ընդ սուրբս քո։ Ի պատրաստեալ քո յօթևանսն սրբոց քոց. ընկալ եւ ըզմեզ փրկիչ յորդեգրութիւն ի դըպրութեան կենաց։ Ի նըստել քո յաթենին դատաւոր ահեղ. խնայեա յարարածըս քո բարեխօսութեամբ և աղօթիւք սուրբ ճըգնաւորացն։

### ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԴԿ

Ի յիշատակըս վըկայից քոց Քրիստոս պարգևեա մեզ. օրհնել ըզքեզ արժանապէս։ Կամաւ մատուցին զանձինս իւրեանց քեզ պատարագ արեամբն իւրեանց եւ ակն ունին պըսակի ի քէն Տէր։ Սոցա աղօթիւք փրկիչ խնայեա ի սուրբ եկեղեցի քո զոր ըստացար պատուական արեամբըդ քո սրբոյ։

### Բ. ՀԱՐՑ ԴԿ

Որ ըզհրաշափառ քո զօրութիւնըդ ծանուցեր ազգի մարդկան. ցուցանելով յաղթող սուրբ զվըկայսն ի պատերազմի. վասն անուան քո || Տէր Աստուած հարցըն մերոց։ Որք ի մարմնի անմարմնացան գեր ի վերոյ քան ըզբնութիւնս. արհամարհելով անարգեցին ըզչար տանջանս և ըզմահ. եւ եղեն վըկայք քո կամաւոր մահուանն. Տէր։ Հանդիսացեալ այսօր և մեք տօնեմք ըզյիշատակ սուրբ վըկայիցն. խաղաղացո ըզկեանըս

մեր աղօթիւք սոցա եւ փրկեա զմեզ ի նեղչաց մերոց. Տէր:

Գ. ԸղՏէր ‖ օրհնեցէք եւ...ու բարձր արարէք ըզնա յաւիտեան: Որ փառացն իւրոց տեսող սուրբ զվըրկայսն արժանի արար. եւ երգակից անմարմնական զօրացն օրհնեցէք: Որ սոքօք լուսաւորեաց զազգս որդւոց մարդկան ի գիտութիւն ճշմարտութեան. եւ հրաւիրեաց յերկնից յարքայութիւնն օրհնեցէք:

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԴԿ

Որ զանճառելին ծընար. սուրբ Աստուածածին կոյս. ‖ օրհնեալ ես յաւիտեան: Որ զարարչակիցըն Հօր. զիսկըզբանէ Բանն Աստուած. յորովայնի քում կրեցեր. օրհնեալ: Զքեզ Եզեկիէլ ետես. երկնային դուռն և հարան անփորձ. օրհնեալ:

ՈՂՈՐՄԵԱ ԴԿ

Ընդ յիշատակըս վըկայից քոց տօնեմք այսօր. Քրիստոս թագաւոր աղաչանօք սոցա ողորմեա: Որք յաղթեցին անօրէն բըռնաւորաց հեղմամբ արեանն իւրեանց. եւ դասակից եղեն վերին զըւարթնոցն: Եւ ընկալան զպըսակս անապականըս յանըստուեր լուսոյն. եւ միշտ ուրախանան ընդ հրեշտակս ի յերկինս:

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԴԿ

Ա. Այսօր յիշատակ սըրբոց քոց. որք տանջանաց անօրինացըն համբերեցին և դասակից եղեն վերին զըւարթնոցն: Այսօր եւ հրեշտակք ուրախանան. ընդ կամաւոր չարչարանըս ճըգնաւորացն որք յաղթեցին անօրէն բըռնաւորացն: Սուրբ ես թագաւոր յաւիտենից. որ նըստիս ի վերայ չորեքկերպեան կենդանեաց և ի սըրբոց քոց փառաւորանիս:

Բ. Փառըք քեզ Հայր երկնաւոր. որ նըստիս ի քրով-

բէս . եւ բարեբանիս ի դասուց սերովբէից ։ Ըզքեզ զովեմք Թագաւոր փառաց Քրիստոս համաձայնեալ ընդ սուրբս քո յեկեղեցիս արդարոց ։ Սըրբեա զանձինս մեր եւ տաճարացո սուրբ Երրորդութեանդ կենդանարար սուրբ Հոգի ։

Գ. Պարծեսցին սուրբքն փառօք եւ ցնծասցեն ի հանգիստս իւրեանց . քանզի ընդ հուր եւ ընդ սուր անցուցին զմարմինս իւրեանց ։ Սուրբ զարիւնս իւրեանց հեղին չարչարանացն համբերեցին . եւ ըզպատուէրս բռնաւորաց անարգեցին յաշխարհի ։ Արդ եկայք հաւատացեալք կատարեսցուք ըզյիշատակ սոցա . քանզի սոքա են մեզ բարեխօսս յարքայութեանն Աստուծոյ ։

Դ. Աջ Տեառն ի վերայ սրբոց իւրոց . եւ փառք իւր հանգուցեալ է յոսկերս սոցա . եւ հոգիք սոցա դասաւորեալ ընդ հրեշտակս ի յերկինս ։ Բանակք հրեշտակաց Տեառն շուրջ են զնոքօք . եւ երգակիցք են միմեանց յօրհնութիւնս Աստուծոյ . եւ հայցեն միաբան զխաղաղութիւն ամենայն աշխարհի ։ Բազում համարձակութիւն է առ Տէր բարեխօսութեամբ սոցա . եւ թողութիւն է մեղաց որք կատարեն ըզյիշատակս սոցա ։

Ե. Աստուած բարձրեալ եւ ի սուրբս հանգուցեալ և ի սրբոց վերօրհնեալ . մաղթելով հայցեմք ի քէն տուող բարեաց . ‖ բարեխօսութեամբ սրբոց մարտիրոսացն . հաշտեաց ընդ մեզ Քրիստոս ։ Որք կործանեցին զանօրինացն ըզպատկերսն . եւ յիշատակ քաջութեան թողին յաշխարհի . բարեխօսութեամբ ։ Պատարագ անուշահոտ մատուցին քեզ ըզմարմինս և զարիւնս . համբերելով չարչարանաց վասն անուանդ քում սրբոյ . բարեխօսութեամբ ։

Digitized by Google

# ՄԱՆԿՈՒՆՔ ԵՒ ՀԱՄԲԱՐՁԻՔ

# ՄԱՐՏԻՐՈՍԱՑ

## ՄԱՆԿՈՒՆՔ ԱՁ

Ա. ԸՋՃԸԳՆՈՒԹՒԾՒՆ սրբոց քոց Քրիստոս տօնելով այսօր ընդ զօրս անմարմնոցն. քեզ երգեմք անլռելի զօրհնաբանութիւն։ Մերկացեալք ըզմարդկային տկարութեան ըզգեստ. հաւատով վառեալ ըզգեստուք. յաղթեալք հակառակամարտիցն ի պատերազմի։ Մեկներեալք ընդ Քրիստոսի հեղմամբ արեան ի մահ. աստուածութեանըն գոլով հրաշակերտք. շինեալք ի վայելչութիւն սուրբ արքայութեանն։

Բ. Զինուորըն Քրիստոսի ի Հօրէ առեալ պարգեւս. յաստուածատունկ ի դրախտէն ծաղկեցաւ մեզ շառաւիղ. ‖ որ է զէն յուսոյ. վահան հաւատոյ։ Իսկ երանելի վըկայն Քրիստոսի զօրանայր ի սուրբ Հոգւոյն. զի զերանութեանցն առնոյր ըզշնորհս ողորմութեան. որ է զէն։ Աստ արասցէք ըզյիշատակ սրբոյն Սարգսի զօրավարին. որ է դուռն երկնից և ճանապարհ արքայութեան. եւ մեզ զէն։

## ՀԱՄԲԱՐՁԻ ԱՁ

Ա. Պարծեցին սուրբքըն փառօք եւ ցընծասցեն. յաւիտենական ի վաստակս իւրեանց յաւուր գալըստեան Փրկչին. ‖ յորժամ գայ փառօք Հօր. փառաւոր լինել ի մէջ սրբոց իւրոց։ Սիրէ Տէր զերկիւղածս իւր եւ պահէ ըզնոսա. եւ բնակէ ի հեզս և ի խոնարհս ի գալըստեանն իւրում. յորժամ։ Փոխանակ ճըգնութեան համբերողաց. մատուցանէ իւրաքանչիւր զանթառամ պըսակ փայլեն որպէս զարեգակն. յորժամ։

Digitized by Google

ՄԱՆԿՈՒՆՔ ԳՁ

Այսօր յիշատակ սրբոց մարտիրոսաց. մանկունք սուրբ եկեղեցւոյ ընդ զօրս երկնից. Սուրբ օրհնութիւն ի բարձունս սուրբ Երրորդութեան։ Այսօր ծննդութեամբ սրբոց մարտիրոսաց. զուարճանան բանակք անմարմնոցն. եկեղեցիք ընտրելոց. սուրբ։ Այսօր շնորհեցան մեզ քարոզք եւ վկայք ի խաւարէ կռապաշտութեան եւ յանաստուածութեան ածեալ ի լոյս զամենայն արարածս. սուրբ։

ՀԱՄԲԱՐՁԻ ԳՁ

Պայծառացիր եկեղեցի Աստուծոյ. Ընդ ծննդութիւն սրբոց վկայիցն. որք նահատակեցան ի յերկրի եւ ի յերկինս պսակեցան։ Ուրախանան եւ հրեշտակք ի յերկինս. ընդ։ Համանմանեալ ընդ նոսին այսօր եւ մեք տօնեմք ըզյիշատակ սրբոց։

ՄԱՆԿՈՒՆՔ ԳԿ

Ընդ զուարթունս երկնից օրհնեցէք զՔրիստոս թագաւորն։ Ընդ դասս երանելի սրբոցն գովեցէք յօրհնութիւն ի նոր զՔրիստոս թագ. Սրբոյ հոգւոյն Քրիստոսի թագաւորին բարեբանեցէք զի ողորմեսցի բարեխօսութեամբ սրբոցն.

ՀԱՄԲԱՐՁԻ ԳԿ

Ծննդաւորք ճշմարիտք եւ վկայք Քրիստոսի. որք զչարչարանս եւ ըզմահ յանձն առէք վասն Տեառն. Ըզձեզ ունիմք բարեխօս առ Քրիստոս վասն անձանց մերոց։ Քանզի հեղմամբ արեան ձերոյ պայծառացան սուրբ եկեղեցիք. եւ զստուերամած խաւար կռապաշտութեանցն բարձէք. ըզձեզ։ Երկնային զօրքն իջեալ ի պատիւ պատարագի մահուան ձերոյ. եւ ըզպսակս անապական առբերելով ի Հօրէ լուսոյ ըզձեզ։

ՄԱՆԿՈՒՆՔ ԴՁ

Ընդ քեզ կարդային յօգնութիւն սուրբ մարտիրոսքն եւ ասէին. || որ ի բարձունս բնակեալդ ես խընայեա ի մեզ։ Դու ես դուռն լուսոյ դու պսակ պարծանաց ի քէն յուսացելոց. որ։ Օրհնեալ գովեալ և ի սուրբս հանգուցեալ. Եւ դու ես ընդունող հոգւոց մերոց. որ ի բարձունս բնակեալդ ես միշտ և յաւիտեան։

ՀԱՄԲԱՐՁԻ ԴՁ

Ճգնութիւնք սրբոց քոց Քրիստոս հաստատեցին ըզհիմունս սուրբ եկեղեցւոյ. կանգնելով ի սմա ըզնը-շան յաղթութեան։ Եւ հեղմամբ սուրբ արեանն իւ-րեանց. ազատեցին ըզտիեզերս ի դիցապաշտ մոլորու-թեանց. եւ եղեն յաղթողք ի պատերազմի։ Ընդ որս եւ մեք աղաչեմք Քրիստոս ընկալ եւ ըզմեզ. յերկնային խորանս ի լուսեղէն առագաստին. բարեխօսութեամբ և աղօթիւք սուրբ ճգնաւորացն։

ՄԱՆԿՈՒՆՔ ԴԿ

Որք եկեալ եմք ի պատուել զյիշատակ սուրբ վը-կայից. առցուք ըսկիզբըն զգօնութեան. աղաղակելով առ Քրիստոս || Տէր փառք քեզ փառ ննմ ուրք քեզ Տէր Աստուած։ Ահաւոր ես հրեշտակաց անտես ի մարմնեղէնից. Երկիր երեւեցար մարմնով ուսուցեր մեզ ասել Տէր։ Ցանմարմնոց ես վերօրհնեալ ի մարդկանէ երկրպագեալ. քեզ փառք վայելէ պատիւ յամենայն ժամ ասել Տէր։

ՀԱՄԲԱՐՁԻ ԴԿ

Ա. Երրորդութեանըն սիրով անձինք յաղթող վը-կայից. արժանաւորք ընդունելոյ ի յառագաստըն լուսոյ։ Զի զառաջին մեղացն ըզբոց արեամբն իւրեանց լուացին. եւ զտիեզերս հրաւիրեցին յօրհնաբա-

Digitized by Google

# ԿԱՆՈՆ

# ՊԱՀՈՑ

## ՕՐՀՆՈՒԹԻՒՆՔ



### ԱՁ

ՀԱՅՐ բազումողորմ. խոստովանիմ առ քեզ որպէս զանառակ որդին. Թող ինձ ըզմեղս իմ և ողորմեա։ Տէր որ գըթացար ի կինըն քանանացի. գըթա և յիս ի մեղաւորս և ողորմեա։ Տէր որ դարձուցեր ըզմաքսաւորն ի գիտութիւն ճըշմարտութեան. դարձո և զիս ըզմոլորեալս. և ողորմեա։

Աստուած բազումողորմ. խընայեա յարարածըս քո Հայր ամենակալ և ողորմեա։ Արեգակն արդարութեան. ծագեա ի հոգիս մեր ըզլոյս ճըշմարտութեան և ողորմեա։ Տուր մեզ Տէր զխաղաղութիւն. և փըրկեա ի նեղչաց մերոց Հոգիդ ճըշմարտութեան և ողորմեա։

Ի նեղութեան իմում օգնեա ինձ Տէր. որպէս երբեմըն Յովնանու և ողորմեա։ Ի յանցանաց իմոց մաքրեա զիս Տէր. որպէս երբեմն ըզմաքսաւորն և ողորմեա։ Ի նենգաւոր շըրթանց փըրկեա զիս Տէր. և յարենէ ապրեցո. և ողորմեա։

Զըղջըման իմոյ զարտասուս. արկանեմ առաջի քո Քրիստոս. Թող ինձ ըզմեղս իմ որպէս երբեմն ըզպոռնըկին. ‖ որ միայնդ ես բազմագութ։ Անկանիմ առաջի քո Քրիստոս. որ հովիւդ ես բանաւոր հօտի. խընդրեա և զիս ըզմոլորեալս. որ միայնդ։ Ըզմեղս իմ ցուցից քեզ Քրիստոս. որ բըժիշկդ ես հոգւոց

Digitized by Google

եւ տէր կենաց. բժշկեա և զիմ զհիւանդութիւնս. որ միայնդ ։

Վըտանգիմ ի բազմութենէ մեղաց իմոց. Աստուած խաղաղութեան օգնեա ինձ։ Ալէկոծիմ հողմով անօրէնութեան իմոյ. Թագաւոր խաղաղութեան։ Ի խորըս մեղաց ծովու տարաբերեալ ծըփիմ. Նաւապետ բարի փրկեա զիս։

Ողորմեա ինձ Աստուած։ Ի լըսել ըզձայն փողոյն յահագին աւուրն. յորժամ հարկանէ հրեշտակապետն եւ կոչէ ի դատաստան ողո։ Ի նըստել քո յաթոռն դատաւոր ահեղ. յորժամ առնես հրափորձութեամբ զքըննութիւն որդւոց մարդկան ողո։

Որ առ ի քէն երկրորդ Ադամ վասն առաջնոյն յանցանաց. բնութեամբ մերով պահելով. զմահաբեր պըտղոյն լուծեալ զպատուհասս. առ նա միշտ բարեխօսեա կեցուցանել ըզմեզ։

— Փառք Հօր։ Արդ աղաչեա մայր Աստուծոյ ըզծնեալն ի քէն վասըն մեր. զի ընդ նըմին պահելով. սուրբ յարութեամբ նորա նորոգեսցուք. առ նա միշտ։

— Այժմ և միշտ։ Ի միասնագամ գալըստեան Աստուածորդւոյն. սուրբ խաչն երեւի եւ լուսաւորէ. զի նա է յոյս հաւատացելոց։

## ԱԿ

ԾՈՎ կենցաղոյս. հանապազ զիս ալէկոծէ։ Մըրրկեալ ալիք. թըշնամին ինձ յարուցանէ։ Նաւապետ բարի. լեր անձին իմոյ ապաւէն։

Մերձ եմ յընկըղմել օգնեա ինձ Նաւապետ բարի.



Digitized by Google

քանզի ծանրացան ի վերայ իմ բեռինք մեղաց ։ Աստուած յօգնել ինձ փութա. քանզի խորք չարեաց ընկղմեն զիս յանդունդս. այլ դու նաւապետ լեր և ինձ ձեռընտու ։ Փրկեա ի վտանգէ ըզնաւաբեկս ի յալեաց ծովէ. քանզի կործանիմ ի մեղաց անօրէ-նութեան իմոյ ։

Աղաչեմ ըզքեզ Տէր պարգեւեա ինձ. ապաշխա-րութեամբ լուանալ ըզմեղս իմ եւ ողորմեա ։ Զար-տասուս իմ և զհառաչանս սրտի իմոյ. մարդասիրու-թեամբդ քո ընկալ Տէր և ողորմեա ։ Մերձեցին խընդրուածք իմ առաջի քո Տէր. բարերարութեամբդ քո խնայեա յիս եւ ողորմեա ։

Աղաչեմ ըզքեզ Հայր երկնաւոր. մի դարձուցաներ զերեսս քո յինէն. զի նեղեալ եմ ես վաղվաղակի լուր ինձ Տէր ։ Մոլորեալ անձն իմ անօրէնութեամբ. մի կորուսաներ զիս Տէր ստ անօրէնութեան իմոյ. որ խընդրողդ ես մոլորելոց ոչխարիս ։ Ծանրացեալ մեղօք ընկղմի անձն իմ. ընկալ զիս որպէս երբեմն ըզՊետրոս. որ ծփիմս ալէկոծեալ յանցանօք ։

Մեղայ Տէր բազումողորմ Աստուած ‖ մեղայ ողոր-մեա ։ Մեղայ Տէր եւ անկանիմ առաջի քո մեղայ ։ Մե-ղայ Տէր խոստովանիմ ըզյանցանս իմ մեղայ ։

Մեղայ քեզ Տէր. քաւեա զիս ։ Մեղաք ա-նօրինեցաք ամենեքեան. ոչ պահեցաք ըզպատուիրա-նս քո. մեղայ ։ Դարձիր Տէր ի բարկութենէ քումմէ. անցո ի մէնջ ըզցասումն քո. մեղայ ։

Որ ըզԲանն անեղական զէակն էից գոյացութեանց. անճառաբար ծընար մարմին եղեալ ի փրկութիւն եղականաց. առ նա ‖ միշտ բարեխօսեա վասն ան-ձանց մերոց ։

— Փառք Հօր։ Որ ըզպըտուղն ի քէն կենաց ընծայեցեր մեռեալն Ադամայ. զորոյ պանծօք քառասնօրեայ քաւեաց զպըտղոյն ճաշակումն եւ յանվախճան ըղնոյն վերածեաց ի կեանս. առ նա միշտ։

— Այժմ և միշտ։ Ի միւսանգամ քո գալըստեանն յերեւել սուրբ նըշանին. արժանի արա ըզծառայս քո վերըստին նորոգման զի դու միայն ես. Թագաւոր փառաց օրհնեալ յաւիտեան։

## ԲՁ

ԴԱՐՁՈ զցասումըն քո ի մէնջ յադաղակել հողեղինացս. բազմագութ Տէր խնայեա և մի կորուսաներ։ կանգնեա զանկեալս ի գլորմանէ զվիրաւորեալս ի թըշնամւոյն. որ բըժիշկդ ես հիւանդաց բըժըշկեա զիմ զհիւանդութիւնս։ Ի յանցանաց իմոց թախծեալ անձն իմ գոչեմ որպէս ըզմաքսաւորն. Աստուած քաւեա զիս ըզմեղաւորս։

Աներեւութից քննող զաղտնեաց բըժըշկեա զհոգւոյ իմոյ զհիւանդութիւն եւ կեցո. միայն մարդասէր։ Որ երկայնամիտդ ես առ ամենեսեան ողորմեա անձին իմոյ բազմամեղի եւ կեցո։ Ամենաբաւական ողորմութեան շընորհս պարգեւեա ինձ յահագին աւուրն ըզթողութիւն եւ կեցո։

Բազում են քո գըթութիւնքդ բազմամեղ անձին իմոյ ողորմեա Աստուած քաւիչ իմ։ Զի քեզ անյիշաչար Տէր մեղայ չարին խաբմամբ ողորմեա։ Ի քո ի միւսանգամ գալըստեանն յորժամ գաս դատել զերկիր. ողորմեա։

Մեղաք մինչեւ յերկինս եւ զարդար ըզցասումըն քո շարժեցաք ի մեզ. Տէր ըստ մեծի քում ողորմութեանդ

ողորմեա մեզ։ Իջաք մինչ ի դժոխս ընկղմեալքս յանօրէնութեան մերում. Տէր յիշեա ըզգինս արեան Որդւոյ քո եւ ողորմեա։ Հալածեա ի մէնջ Տէր նըշանաւ խաչի քո. զընդդիմամարտ և զաներեւոյթ գազանն. եւ մի տար յապականութիւն զքո ժառանգութիւնս։

Տաճար լուսոյ անըստուերին և առագաստ անճառ Բանին. որ ըզնախնոյ մօրն Եւայի բարձեր զանէծսըն տըրտմալի. հայցեա յՈրդւոյ քո միածնի Հօր հաշտութեանըն միջնորդի. բառնալ ի մէնջ ըզխռովութիւն և տալ զոգւոց խաղաղութիւն։

— Փառք Հօր։ Աստուածածին անհարսնացեալ յերկրէ երկնից հարսն ընծայեալ. յորժամ բազմիս լուսոյ նըման քո միածնիդ յաջակողմեան. յայնժամ մաղթեա ընդ մեր ըզնոյն փրկել ըզմեզ յահեղ բոցոյն. համադասել ընդ արդարոցն երգել ըզփառս ընդ երկնայնոցն։

— Այժմ և միշտ։ Երեւեալ աղիւսանըման ակըն պատուական ի ձեւ խաչին. հերձանելով ըզծովըն կարմիր առաջնորդելով ժողովրդեանն սեամբ ամպոյ ըլլոյսն անմեկնելի որ ձեւացոյց մեզ. սովաւ մտանել ընդ դուռն անեղաշէն դրախտին Տեառն։

ԲԿ

Յամենայն ժամ. աղաչանք իմ այս են. ի մեղաց իմոց սուրբ արա զիս Տէր։ Յանցանաց իմոց զարհուրի սիրտ իմ. աղաչեմ ըզքեզ թող ինձ Տէր։ Արտասուաց իմոց մի լռեր Տէր. զի պանդուխտ եմ ես յանցաւոր երկրի։

Ողորմեա ինձ Աստուած իմ ողորմեա ինձ. զի անպատասխանի եմ յամենայնի թող ինձ Տէր։ Ճանա-

պարհըք քո ուղիղ են. ես միայն մոլորեցայ դարձո զիս եւ ողորմեա ինձ Աստուած: Դատաստանըք քո արդար են. ես միայն եմ մեղուցեալ, քաւեա զիս և ողորմեա ինձ Աստուած:

Ցոյց իմ ես դու Տէր քաւիչ յանցանաց իմոց. մի անտես առներ զըղջումն արտասուաց իմոց ողորմեա ինձ Աստուած: Առ քեզ ապաւինեցայ որպէս զանառակ որդին. Հայր մեղայ յերկինս և առաջի քո ողորմեա: Փրկեա զիս Աստուած ի բազում մեղաց իմոց. արա արժանի. քոյին սուրբ արքայութեան նդ ողորմեա:

Մեղք իմ բազում են յոյժ ծանր են քան զաւազ ծովու. քանզի քեզ միայնոյ մեղայ. ողորմեա ինձ Աստուած: Բաց Տէր ըզդուռն ողորմութեան որ ողբալով կարդամ առ քեզ. քանզի: Հեղ յիս ըզգթութիւնըդ քո բազումողորմ եւ մարդասէր. քանզի:

Մեղայ քեզ Տէր մեղայ ողորմեա: Մեղայ անօրինեցայ եւ մատնեցայ ի ձեռս անօրէն թշնամւոյն. արդ անկեալ աղաչեմ թող ինձ Տէր: Քան զամենեսեան առաւել մեղայ Տէր իմ գթած. քան զամենեսեան անօրինեցայ:

Եկեսցէ Տէր ի վերայ մեր ողորմութիւն քո եւ բան փրկութեան քո. պահեսցէ զանձինս մեր ի մեղաց: Ողորմութիւն քո եւ ճշմարտութիւն քո եւ լոյս երեսաց քոց. առաջնորդեսցէ մեզ ի յարդարութիւն: Որ ողորմածդ ես գթած և երկայնամիտ Տէր ընկալ զաղաչանըս մեր. բարեխօսութեամբ սուրբ Աստուածածնին:

Տէր ըզլուր միանգամ քո գալըստեանն լըւայ և երկեայ. զի ուսայ ի սըրբոց պատուիրանաց եթէ գաս

դու ի դատել զերկիր ։ Տէր յիշեցի ըզչար ըզգործս իմ եւ զարհուրեցայ. զի ծանեայ ճշմարտութեամբ զահաւոր եւ զանաչառ ըզքո դատաստանն ։ Տէր յիշեցի և ըզգուշ արարչական սիրոյ քո առ քո արարածս. եւ ի քո գթութիւնդ ապաւինեալ աղաչեմ ողորմեա ինձ յաւուր յայնմիկ Քրիստոս արդար դատաւոր ։

°Աղաչանօք Աստուածածնին անապական քում ծննդին. զիմանալի աչքս սրտից մերոց. բացցես ողորմութեամբ հայել ի լոյս քո Քրիստոս ։

— Փառք Հօր ։ Մարիամ կոյս անարատ զանապական փեսայդ աղաչեա. զի հաշտեսցի ընդ այրս եղեալ հոգիս. և միաւորեսցէ դարձեալ սիրով ընդ հեռացեալս ի նմանէ ։

— Այժմ և միշտ ։ Ցօրժամ յարուցեալ փայլիս անճառ լուսով լուսաւորես զհաւատացեալսն. եւ դատապարտես զազգըն հրէից անհաւատից ով սուրբ քառաթեւ. եւ զիս լուսաւորեա ըզխաւարեալըս մեղօք եւ դասակարգեա ի դասս մատենագրի յանճառ երկնից յարքայութեանդ. զի անդադար օրհնաբանիս և քո են փառք յաւիտեանս ամէն ։

Գ.Զ

°ՋՆՐՏՈ զիս յորոգայթէ որսողին. եւ յամենայն վըտանգից ամբարշտաց. ‖ եւ ողորմեա ։ Ցաներեւոյթ թըշնամւոյն եւ ի գաղտնի նետից բանսարկուին պահեա. եւ ող ։ Փրկեա զիս ի յանցանաց մեղաց իմոց. եւ նորոգեա զիս հոգւով գիտութեան. եւ ող ։

Ծով մեղաց իմոց զիս ալէկոծէ. որ ես նաւապետ

բարի . || շնորհեա՛ ինձ նաւահանգիստ հա՛յր ամենակա՛լ ։ Խորքք պատրանաց զիս կորուսանեն . այլ դու նաւապետ բարի . շնորհեա՛ ։ Ո՛ր միայն իշխանդ ես թողուլ ըզմեղս . եւ ես աղաչեմ ըզքեզ . Տէ՛ր թո՛ղ ինձ ըզմեղս իմ հա՛յր ամենակա՛լ ։

Մերձեա՛լ է ծ՛ր գալոյ քո Տէ՛ր . լո՛ւր ձայնի աղօթից իմոց || որ կարդամս առ քեզ եւ ողորմեա՛ ։ Բանից իմոց ունկնդրի՛ր Տէ՛ր . եւ ի միտ առ զաղաչանս իմ զաղաւօտս որ կարդամս առ քեզ եւ ողորմեա՛ ։ Ո՛ր ընկղմեալս եմ ի խորըս չարեաց . սուրբ զհոգիդ քո առաքեա՛ առ իս որ կարդամս ։

Ողորմեա՛ ինձ Աստուած զի քեզ միայնոյ մեղայ ։ Առաւել լըւա զիս . ի տըղմոյ յանցանաց աղբիւր բըժշկութեան . եւ ողորմեա՛ ։ Ցարենէ փըրկեա զիս . որ հոգւոց և մարմնոց ունիս իշխանութիւն . եւ ողորմեա՛ ։

Վիրաւորեալ յանցանաք անձն իմ առ քեզ Տէր համբարձի զաչս իմ . Թո՛ղ ինձ ըզմեղս իմ . միայն բարեգութ || եւ ողորմեա ինձ Աստուած ըստ մեծի ողորմութեան քում ։ Կործանեաց զիս չարագործ թըշնամին . եւ կամի խապառ զիս որսալ . Հա՛յր բարեգութ ըժըշկեա՛ զվիրաւորեալս եւ ողորմեա ։ Անգունդըք մեղաց պաշարեցին զիս . զի բազում են քան զաւազ ծովու առ քեզ Տէր պաղատիմ . փըրկեա՛ ի վըտանգէս եւ ողորմեա ։

Ջանապական ըզհոգեւոր ըզգանձըն . յապականացու կենցաղըս ծախեցի . || այլ առ քեզ միայն պաղատիմ բարերար փըրկիչ . խնայեա՛ ի մեղուցեալ ծառայս ։ Ջցանկ հոգւոյ իմոյ քակտեցի . և եղէ անբարունակ որթ . այլ ։ Ոստաքանց եղէ ես որպէս զարմանենի .

Digitized by Google

պըտղակրոյս որպէս ձիթենի. այլ անյիշաչար եւ անո-խակալ փըրկիչ խնայեա ի մեղուցեալ ծառայս ։

Անտանելւոյն տաղաւար բարձող էիցըս բարձողին. որ ծընար զԱստուած մարմնով զանմարմնաբար ծընօ-ղըն Հօր. բարեխօսեա վասըն մեր Աստուածածին Մա-րիամ ։

— Փառք Հօր ։ Որ վառեցար ի յարփւոյն եւ ոչ կը-զար ըստ մորենւոյն . այլ եւ տուր զՀացըն կենաց կե-րակուր բանաւորաց . բարեխօսեա առ Քրիստոս ջընջել ըզգիր մեղաց մերոց ։

— Այժմ և միշտ ։ Զկենդանագիր անարատ ծընո-ղի քո. արկանեմք առաջի անոխակալ տէրութեան-նըդ քո. յորժամ գաս փառօք Հօր դատել ըզթըշնամին խաչի քոյ . ներեա յանցանաց մերոց բարեխօսու-թեամբ մօր քո եւ կուսի. աղաչեմք ըզքեզ Տէր . պահպանեա ըզմեզ ընդ Հովանեաւ խաչի քո սուրբ ։

Գ Կ

ՔՐԻՍՏՈՍ Աստուած աստուծոց. || ողո մ իմ րմեա ։ Անօրէնութեամբ ի մեղս երկնեաց զիս մայր իմ. ա-ղաչեմ փըրկիչ ողո ։ Վիրաւորեալ մեղօք անկանիմ առ քեզ փըրկիչ մի անտես առներ ողո ։

Մաքսաւորն Հառաչանօք ի տաճարին էառ ըզքաւու-թիւն. || Նովին ձայնիւն և ես գոչեմ ողորմեա ինձ Աստուած ։ Աւազակն աղաղակէր ի խաչին յիշեա զիս Տէր. Նովին ։ Անառակ որդին աղերսանօք աղա-չէր ըզքեզ Հայր մեղայ յերկինս և առաջի քո. Նովին ։

Շնորհեա մեզ Տէր ընդ աղքատաց օրինակին Ղա-զարու ժուժկալութիւն . զի կամաւոր աղքատութեամբ

Digitized by Google

արքայութեանդ երկնից ընդ նմին լիցուք արժանի. լուր մեզ եւ ողորմեա Քրիստոս Աստուած։ Որ փոխանակ հացին կարօտութեան զհացն անմահութեան նմա շնորհեցեր. եւ ընդ մեծատանն անգթութեան ի գոգն Աբրահամու ըզնա ընկալար. լուր մեզ եւ ողորմեա Քրիստոս Աստուած։ Լուսաւորեա զաչըս սըրտից տեսանել մեզ ողորմութեամբ ի քէն Տէր զողորմութիւն. զի մի ընդ մեծատանն հայցեսցուք ի բոց հնոցին ծագիւ մատին ջուր ի զովացումն. լուր։

Զանսկիզբն Աստուած զՀայրն ամենակալ. բարեբանեցէք ընդ զուարթունս երկնից։ Զառ ի Հօրէ ծընեալ զՈրդին միածին. բարեբանեցէք հրեշտակային ձայնիւ։ Եւ զնորոգող սուրբ զՀոգին ձայնիւ ցընծութեամբ. բարեբանեցէք անլռելի ձայնիւ։

Անսկիզբն Աստուած և թագաւոր երկնաւոր. բարեբանեալ ի զօրաց անմահից երկնաւորաց. ըզքեզ օրհնեմք Հայր անսկիզբն։ Խոնարհեցար ի բարձանց վասն մերոյ փրկութեան արձակիչ կապելոց եւ բըժիշկ հոգւոց մերոց. ըզքեզ գովեմք Որդիդ միածին։ Որ էակից ես ընդ Հօր և փառակից միածնիդ բաշխող պարգեւաց եւ տուող ողորմութեան. ըզքեզ բարեբանեմք սուրբ Հոգիդ ճշմարիտ։

Որ ըզգլուխ աստուածային քո բանի. ծագեցեր յաշխարհամած խաւարն անգիտութեան. լուսաւորեա եւ զմեզ Հօր իմաստութիւն։ Որ զհամօրէն դատաստանին օրինակ. նշանակեցեր առ մեծատունն և Ղազարոս. ներհակաբար տալով զոր աստ ընկալան։ Վասն որոյ աղաչեսցուք ըզքեզ Տէր. փրկել ըզմեզ ի հրոյ մեղաց և տանջանաց. հանգուցանել ի գոգ նահապետին արդարոյ։ Որով եւ մեք ընդ հրեշտակացն

դասուց. անպաժանելի սուրբ Երրորդութեանդ. հա-մաձայնեալ երգեմք ըզփառս ի բարձունս ։

Ուրախացիր բարձրելոյն հովանացեալ զօրութեամբ եւ բնակարան սուրբ Հոգւոյն որով ծընար զԲանն Աստուած. բարեխօսեա վասըն մեր Աստուածածին Մարիամ ։

— Փառք Հօր ։ Աղբիւր կենաց բըղխեալ յընդմէջ սուրբ Աստուածածին. որով արբեցաւ երկիր ծարաւեալ Հոգւոյն իմաստիւք. տալ մեզ մաղթեա աղբիւրս ար-տասուաց. մաքրել ըզմեզ ի մեղաց մերոց ։

— Այժմ և միշտ ։ Քեւ ցընծան ըստորայինքս ամե-նայն. ի միաւանգամ քո գալըստեանն. եւ յաւէժ ը զուարճանան դասք անմարմնոցն առէիցս ։

ԴՁ

ՀԱՄԲԱՌՆԱՄ առ քեզ Տէր զաչս իմ նայել յիս գըթութեամբըդ քո եւ ողորմեա ։ Դու ես յոյս և ա-պաւէն իմ զերծո զիս յորոգայթէ մեղաց եւ ողորմեա ։ Ապրեցուցիչ իմ եւ փրկիչ իմ ապրեցո զիս յորոգայ-թէ մեղաց եւ ողորմեա ։

Բազմութեամբ յանցանօք. ծանրաբեռնեալ է անձն իմ. միայնոյ քեզ մարդասիրի աղաչեմ. ողորմեա ինձ Աստըւած ։ Բըղխմամբ արտասուաց. եւ հառաչանօք սըրտի իմոյ. անդադար հայցեմ բազմամեղութեամբ || քաւեա զիս Աստըւած ։ Բազմագութ մարդասէր. չնոր-հեա զթողութիւն իմոյ յանցանաց. զի առ քեզ միայն պաղատիմ քաւեա ։

Աստուած մարդասէր. որ զմաքսաւորն արդարացու-ցեր || քաւեա զիս ըզմեղաւորս ։ Որ քղանցիւ հան-

դերձի քո. զմերձեցեալն ի քեզ բժշկեցեր քաւեա։ Որ բանիւ հրամանի քո զանդամալոյծն առողջացուցեր քաւեա։

Որ զաղաղակ կուրոյն այլազգւոյ. անընկալեալ փրկիչ մարդասիրապէս. Եւ զիս անպաշխարութեանն որամ արժանի ընձայն մեղուցելոյս ընդունող։ Որ հնազանդմամբ ձայնի աղախնոյն. ոչ լռեցեր փրկիչ ընդունակ մեղաւորաց. եւ զիս։ Որ զառաջնապարգեւի քո նշխար. ոչ խնայեցեր ընծեռել շանցն հովուասիրի. եւ զիս։

Անկանիմ առաջի քո եւ խնդրեմ զթողութիւն յանցանաց իմոց. Մի անտես առներ հայր զաղաչանս իմ։ Աղաղակեմ որպէս մաքսաւորն եւ հեծեծեմ զարտասուս իմ առաջի քո որպէս պոռնիկն. մի։ Ցաներեւոյթ թշնամւոյն պարտեցայ եւ ի գաղտնի նետից բանսարկուին վիրաւորեցայ. մի անտես առներ հայր զաղաչանս իմ։

Անկանիմ առաջի քո Տէր. Բազմամեղիս ողորմեա։ Աղաղակեմ առ քեզ փրկիչ քանանացւոյն ըզձայն բազմամ։ Մաքսաւորին հառաչմամբ կարդամ առ քեզ փրկիչ եւ բարերար բազմամեղիս։

Ողորմեա ինձ Քրիստոս. ողորմութեամբդ քո մեծաւ զի կարօտ եմ ես շնորհի քո եւ ողորմութեան. ողորմեա եւ լուր ինձ բազմամեղիս։ Լուր Տէր ձայնի ողբալոյս. եւ ցաւագին պաղատանացս. որ ամօթով կամ առաջի քո իմ չարաչար վարուքս. ողորմեա։ Ընկալ Տէր զաղաչանս իմ եւ զհառաչանս սրտի իմոյ. որ աղաղակեմ որպէս կինն քանանացի. ողորմեա։

Որ եկեր ի փրկութիւն մարդկան ծննդեամբ կու-

սին Մարիամու. եւ կենդանարար քո յարութեամբդ հրաւիրեցեր ըզմահացեալքս ի յարութիւն անմահութեան. վասն որոյ աղաչանօք մօր քո կեցո զմեզ Փրկիչ։

— Փառք Հօր։ Որ անապական ծննդեամբըդ քո լուծեր զերկունըս նախամօրն. Մարիամ մայր Աստուծոյ բարեխօսեաց առ միածին Որդին լուծանել զկապանըս մեղաց մերոց. եւ աղաչեաց փրկել զանձինըս մեր ի փորձութենէ։

— Այժմ և միշտ։ Բանն անեղ համագոյ որ ընդ Հօր եւ սուրբ Հոգւոյն երեւեալ ի յերկրի պայծառացան արարածք. հրաշօրին կարողութեամբ եւ ըզմեզ վերագրեաց յորդեգրութեան շնորհս։

## ԴԿ

ՔՐԻՍՏՈՍ Աստուած յոյս ապաշխարողաց. շնորհեա զթողութիւն բազում յանցանաց իմոց։ Առ քեզ բազմագութ ապաւինեալ կարդամք մի մերժեր ըզմեզ յողորմութենէ քումմէ։ Որպէս զաւազակն աղաղակեմ առ քեզ յիշեա եւ զիս Տէր. ի քում արքայութեանդ։

Ըզմեղս իմ խոստովան լինիմ առ քեզ Քրիստոս. որ միայնդ ես բազմագութ թողութեամբ. Ողորմեա ողորմեա ինձ Աստուած։ Դու Տէր որ ճշմարտութեանց ես սիրող. եւ քըննես ըզծածուկըս գաղտնեաց սըրտի իմոյ. Ողորմեա ողորմեա։ Տուր ինձ ցընծութիւն փրկութեան. եւ Հոգւով տէրութեան ըրդ քո հաստատեա զիս. եւ ողորմեա ողորմեա։

Այլք յանցանաց զիս ալէկոծեն. եւ մեղք իմ բազում զիս յանդիմանեն։ Այրդ զինչ արարից մեղուցեալ անձամբս. որ չեմ ապրելոց յանհանգին հրոյն։

Digitized by Google

Մեղայ քեզ Քրիստոս Որդի Աստուծոյ. շնորհեա զթողութիւն բազում յանցանաց իմոց։

Տէր որ ի մէջ լերինն. աղբերացուցեր ըզջուրն ի վիմէն։ Տէր ի սրտէ իմմէ. հան ինձ արտասուս ապաշխարութեան։ Զի կեցից եւ ապաշխարութեամբ ապրեցայց ի հանդերձեալ քոց դատաստանացդ։

Մեղուցեալ անձամբ կարդամ առ քեզ. Հայր երկնաւոր. օգնեա ինձ ի նեղութեանս. ‖ որ մեղօքս եմ մեռեալ օգնեա ինձ։ Վիրաւորեցայ ես յաներեւոյթ թշնամւոյն. բժիշկ հիւանդաց. բժշկեա զիմ զհիւանդութիւնս. որ մեղօքս։ Մոլորեցայ ես որպէս զոչխար կորուսեալ. խնդրող գերելոց. խնդրեա զիս ըզմոլորեալս. որ մեղօքս։

Մեղայ քեզ Տէր քաւեա զիս. ‖ եւ ողորմեա ինձ Աստուած։ Ոչխար եմ բանաւոր հօտի քո եւ առ քեզ ապաւինիմ հովիւ բարի. խնդրեա զիս ըզմոլորեալս. եւ ող։ Ի ծովու մեղաց ալէկոծեալ եմ եւ առ քեզ աղաղակեմ նաւապետ բարի. փրկեա զիս ի վտանգէս. եւ ող։

Վասն որոյ աղաչեմ. մայր Աստուծոյ Մարիամ. զմիածին քո զորդին զի շնորհեսցէ ստ աւազակին. ժառանգել վերստին մեզ ըզդրախտին վայելչութիւն։

— Փառք Հօր։ Ցընծա Մարիամ. արեգականն արդարութեան արեւելք. եւ աղաչեա զառ ի քէն ծընեալն Աստուած փառըն մեր. զի դարձուսցէ վերստին զմեզ ի դրախտին ժառանգութիւն։

— Այժմ և միշտ։ Յաղթող զօրութեամբ խաչի քո պահեա ըզմեզ Քրիստոս Աստուած. որ տարածեցեր ըզձեռըս քո ի նմա. եւ լուծեր ըզկնիք դատապարտութեան յանցանաց մերոց. ապրեցուցաներ ըզմեզ ի պատրանաց թշնամւոյն։

# ՄԱՆԿՈՒՆՔ ԵՒ ՀԱՄԲԱՐՁԻՔ

# ՊԱՀՈՑ



### ՄԱՆԿՈՒՆՔ ԱԶ

ԶԱՐԱՒՕՏՈՒ զօրհներգութիւնըս մարդասիրութեամբըդ քո ընկալ թագաւոր փառաց. և || զմանկունս եկեղեցւոյ քո պահեա ի խաղաղութեան: Որ տեսողդ ես խոնարհաց յերկնից ի յերկիր և տեսող ողորմութեան ազգի մարդկան. ըզմանկունս: Ընդ սերովբէսըն սըրբասաց համաձայնեալ քեզ երգեմք. երեքսըրբեան տէրութիւն խնայեա քաղցրութեամբ յարարածըս քո. և զմանկունս:

### ՀԱՄԲԱՐՁԻ ԱԶ

Ինձ օգնութիւն ի Տեառնէ. Աստուծոյ իսրայէլին եկեսցէ: Եւ որ պահէն զիսրայէլ անշուշտ նիրհով. ինձ: Զինա է Տէր տերանց և Աստուած յաւիտենից. ինձ:

Համբարձի զաչս իմ առ քեզ որ թագաւորդ ես թագաւորաց. || փրկել ըզմեզ և պահել յանհրաւոյթ թըշնամւոյն: Արեգակն արդարութեան յէից լուսոյդ ծագեաց մեզ փրկող. փրկել: Անձըն իմ առ քեզ պաղատի կարդամ առ քեզ Հայր բարգըմածգութ. փրկեա ըզմեզ և պահեա յանհրաւոյթ:

### ՄԱՆԿՈՒՆՔ ԱԿ

Լոյս փառաց Բանդ Աստուած. որ ծագեցեր ի մեզ ըզլոյս գիտութեան || կարդամք առ քեզ Տէր. առաւօտու աղօթք մեր հաճոյացին քեզ: Ցանմարմնոց վերօրհնեալ ի մարդկանէ երկըրպագեալ. բնակեալդ ի լոյս անմատոյց կարդամք: Երեքսըրբեան տէրութիւն միանական աստուածութիւն բնակեալդ ի լոյս անմատոյց կարդամք:

Digitized by Google

ՀԱՄԲԱՐՁԻ ԱԿ

Օգնական մեր լեր Տէր և ապաւէն յամենայն ժամ ամրացո աներկիւղ. զհաւատացեալքս ի քեզ։ Հայր բազումողորմ. որ խընամողդ ես յամենայնի շնորհեա մեզ խաղաղութեամբ. հասանել ի նաւահանգիստ։ Որդիդ միածին. որ ի կառսդ ես քերովբէից շնորհեա մեզ յաջակողմեանն. դասել ընդ սուրբս քո։ Հոգիդ ճշմարիտ. որ միշտ յանճառ փառօք բարեբանիս ընկալ ըզմեր օրհներգութիւնս. ի ժամ երեկոյիս։

ՄԱՆԿՈՒՆՔ ԲԶ

Մանկունք եկեղեցւոյ փառաբանիչք սուրբ Երրորդութեանն. օրհնեցէք ըզՀայրն երկնաւոր ‖ անդադար երգով։ Պաշտօնեայք Քրիստոսի լուսաւորեալք սուրբ աւազանաւն. գովեցէք զՈրդին միածին ան։ Քահանայք հոգեւոր երգով ընդ սերովբէսն եւ ընդ քերովբէսն. բարեբանեցէք զՀոգին ճշմարիտ անդադ։

ՀԱՄԲԱՐՁԻ ԲԶ

Համբառնալով զաչս մեր կարդամք առ քեզ մարդասէր. որ յահեղակերպ յաթոռըդ նըստիս։ Ընդ հովանեաւ աջոյ քո պահեա ըզմեզ բազմագութ. որ յանմարմնական զօրացըդ գովիս։ Փառըք քեզ Աստուած փառաւորեալ յաւիտեան. փառք ամենազօր տէրութեանըդ քո։

ՄԱՆԿՈՒՆՔ ԲԿ

Արթունք եւ պատրաստք եղերուք Տեառն Աստուծոյ մերոյ։ Երգել եւ սաղմոս ասել Տեառն Աստուծոյ մերոյ։ Զի նա է Տէր Աստուած մեր. փրկէ ըզմեզ եւ կեցուցանէ։

ՀԱՄԲԱՐՁԻ ԲԿ

Ցօգնութիւն մեզ ժամանեա կարող Տէր. առաքեա ի

Digitized by Google

բարձանց զքո զխաղաղութիւնդ. || Եւ պահեա զքո յուսացեալքս ալէլուիա: Անպարտելն մեր եւ փրկիչ հզօր թագաւոր. ըզնըշան յաղթութեան խաչի քո առաքեա առ մեզ. Եւ պահեա: Վերբերգեմք քեզ ի բարձունս ընդ անմարմնոց բազմութիւնսն. զաղաչանս մեր զերեկոյիս ընկալ քո բարերարութեամբդ. Եւ պահեա:

ՄԱՆԿՈՒՆՔ ԳԶ

Ըզքեզ զբարեբանեն մանկունք եկեղեցւոյ: Արեգակն արդարութեան լոյս ճշմարտութեան Քրիստոս Աստուած ըզքեզ: Յարեւելից և յարեւմտից ի հիւսիսոյ եւ ի ծովէ. քեզ երկրպագեն ամենայն քո արարածք. Եւ զքեզ:

ՀԱՄԲԱՐՁԻ ԳԶ

Զօրհներգութիւնս բանաւոր պատարագ քեզ ի մըտանել արեգական վերառաքեմք. || Թագաւոր յաւիտենից: Յամենայն փորձութենէ թըշնամւոյն. ամենակարող աջովդ քո պահպանեա ըզմեզ Թագաւոր: Ի մշտընջենաւոր քո լերանց. օրհնաբերեցաք փառաւորել սուրբ զԵրրորդութիւնդ. Թագաւոր:

Պահապան խնդրեմք ի քէն Քրիստոս մի անտես առներ. այլ շնորհեա խնդրողացս ի քէն զամենայաղթ զօրութիւն սուրբ խաչի քո. յօգնութիւն անձանց մերոց: Եւ մի տար սասանութեան զոտս մեր Փրկիչ. այլ ամրացո հաստատուն հաւատով զանձինս մեր. զյոյս զսէր եւ զհաւատս մինչեւ յաւիտեան: Աղբերացուցես ի մեզ ըզշնորհս քո զողորմութեան. Տէր Աստուած խոստովանեսցուք հաւատով սուրբ զԵրրորդութիւնդ. զՀայր եւ զՈրդի և ըզսուրբ զՀոգիդ յաւիտեանս ամէն:

ՄԱՆԿՈՒՆՔ ԳԿ

Օրհնեցէք զՏէր. եւ օրհնեցէք զանուն նորա։
Գովեցէք զՏէր. եւ բարեբանեցէք զանուն նորա։
Աւետարանեցէք օր ըստ օրէ զփրկութիւն նորա։

ՀԱՄԲԱՐՁԻ ԳԿ

Տուր մեզ Տէր զզգնութիւն ի նեղութեան. զի օրհնեսցուք հանապազ զահաւոր անուն քո սուրբ։ Պահեա զմեզ Տէր յամենայն փորձութենէ. յաներեւոյթ թշնամւոյն եւ ի գաղտնի նետից նորա։ Դու յոյս մեր և ապաւէն յամենայն ժամանակի. որ օրհնիս հանապազ ի քոյոց արարածոց։

Հովանի աջոյ ձեռին քո Տէր պահեսցէ զմեզ. եւ ոչ նիրհեսցէ որ հովուէրն զիսրայէլ։ Զօրութիւն սրբոյ խաչի քո Քրիստոս պահեսցէ զմեզ. եւ եղիցի մեզ պահապան ի տուէ և ի գիշերի։ Ետուր երկիւղածաց քոց նշան. եւ զէն յաղթութեան ընդդէմ աներեւոյթ թշնամւոյն։

ՄԱՆԿՈՒՆՔ ԴՁ

Մանկունք զՏէր օրհնեցէք. որոյ անուանն որ էն ‖ եւ մինչ եղիցի անուն Տեառն օրհնեալ։ Ծագմամբ լուսոյ զարդարեաց զազգըս մարդկան թագաւորըն Քրիստոս. եւ մինչ։ Որդիք լուսոյ տուք զփառըս հօրըն լուսոյ. Որդւոյն միածնի եւ սուրբ Հոգւոյն յաւիտեանս ամէն։

ՀԱՄԲԱՐՁԻ ԴՁ

Ըզքեզ կարդամք յօգնութիւն որ անքուն ակամբ պահես զիսրայէլ եւ զիս փրկեա ի փորձութենէ. ‖ ալէլուիա ալէլուիա։ Ըզքեզ աղաչեմք Տէր անաանելի պահեա զոտըս մեր ի քո սուրբ ի պատուիրանիդ. ալէ։ Ըզքեզ փառաւորեմք Տէր որ նըստիս ի

վերայ չորեքկերպեան կենդանեաց. և հայրիս քաղցրու-թեամբ յարարածըս քո. ալէլուիա ալէլուիա։

ՄԱՆԿՈՒՆՔ ԴԿ

Է անուն Տեառն օրհնեալ. ‖ յայսըմհետէ մինչև յաւիտեան։ Եւ եղիցի անուն Տեառն օրհնեալ. յայսըմ։ Փառաւորեալ անուն Տեառն օրհնեալ. յայս։

ՀԱՄԲԱՐՁԻ ԴԿ

Մըտցեն աղօթք իմ Տէր ի տաճար սուրբ քո. ‖ եւ առաքեա ի մեզ Տէր զօգնութիւն ի լեռնէ սըրբոյ քումմէ։ Հըզօվանասցի աջ քո Տէր ի վերայ ստեղծուա-ծոց քոց. եւ առաքեա։ Զերեկոյի աղօթս մեր ընկալ Տէր բարեխօսութեամբ ծընողի քո. եւ առաքեա։



Հ Ա Ր Ց Ք

# ՀԱՆԳՍՏԵԱՆ



ՀԱՐՑ ԱՁ

ՕՐՀՆԵԱԼ ես դու Քրիստոս որ յարեար ի մեռելոց ողորմած և կոխեցեր ըզմահ. ‖ Տէր Աստուած հար-ցըն մերոց։ Որ մահկանացուացս կեանք ես զհոգիս ննջեցելոց մեր ընկալ Տէր։ Զորս փոխեցեր յաշ-խարհըն կենդանեաց. հանգըստեան արժանաւորեա Տէր։

Գ. ԸզՏէր ‖ օրհնեցէք եւ բարձր արարէք ըզնա յա-ւիտեան։ Եկեցէք Որ գալոցն է զօրութեամբ բազմաւ-ազգմամբ ձայնիւ կենագործէ ըզննջեցեալսն ըզՏէր օրհ։ Նսցէ Աղաչեմք ըզքեզ բարերար. հանգո զհոգիս ծա-ռայից քոց ընդ սուրբըս քո օրհնեսցուք եւ բարձր արասցուք զանուն քո յաւիտեան։

### ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԱՁ

Ցարուցելոյն ի մեռելոց բնակարան մայր եւ կոյս. որ ըզնընջեցեալըն յԱդամայ կենագործէ անապական. ‖ զքեզ մեծացուցանեմք որ օրհնեալդ ես ի կանայս: Արարողին երկնի և երկրի եղեր տաճար և առագաստ. որ ըզնընջեցեալըն մեր հրեղէն նորոգէ. զքեզ: Կերակրողին տիեզերաց արբուցեր ըզքո սուրբ ըզկաթն. որ ըզնընջեցեալըն մեր վերըստին նորոգէ. զքեզ:

### ՈՂՈՐՄԵԱ ԱՁ

Որ ստեղծմամբ ըստ պատկերի քո Տէր պատուեցեր ըզմեզ. ընկալ եւ այժմ ըզնընջեցեալսն ի քեզ ուղիղ հաւատով. ‖ ըստ մեծի քում ողորմութեան: Որ շնորհօք սուրբ Հոգւոյն լուսաւորեցեր. յիշատակի իւրեանց զհոգիս նոցա ընկալ մարդասէր. ըստ: Որք հաղորդեցան մարմնոյ եւ արեան քո Տէր. հանգո զհոգիս նոցա ընդ սուրբըս քո Քրիստոս Աստուած. քանզի գինք սուրբ արեան քո են:

### ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԱՁ

Ա. Քեզ վայելէ Աստուած օրհնութիւն. որ յարութիւնդ ես ձայնիւ յաւիտենից ննջեցելոցն. Թագաւոր եւ իշխան վերօրհնեմք ըզքեզ: Ի միւսանգամ գալըստեանըն քո Քրիստոս փառաց Թագաւոր. ի ձայն փողոյ նորոգին հոգիք ննջեցելոցն. և յառնեն ի մեռելոց անապական մարմնով: Վասն որոյ եւ մեք ըզքեզ աղաչեմք Հայր երկնաւոր. դասաւորեա ըզնընջեցեալսն մեր ի վերինըդ քո Երուսաղէմ. ի ժողովս անդրանկաց գրելոց ի յերկինս:

Բ. Զայն արկեալ կենարարին աստուածային բարբառով. ասէ եկայք օրհնեալք Հօր իմոյ ժառանգեցէք. պատրաստեալ ձեզ ըզկեանսն ի հանդերձեալ երկրին.

Ընդ առաջ ելանել քեզ հաւատով ի յօդըս վերինս. աստուածազգեաց լուսով պայծառացեալ ի դասս անմարմնոցն. և լըսել ըզձայն երանաւէտ կոչմանն: Ընդ աջմէ քումմէ կացո ընդ իմաստուն սուրբ կուսանսն. և լուսեղէն առագաստին պայծառացեալ ի դասս անմարմնոցն. և ժողովս անդրանկաց գրելոց և յերկինս:

Գ. Զհոգիս ծառայից քոց Քրիստոս. ընկալ ի դասս անդրանկաց գրելոց և յերկինս: Ընկալ փառըն սոցա ըզբանաւոր պատարագս և մէնջ. և շնորհեա նոցա ըզթողութիւն գտանել յաւուրն յետնում: Հաշտեա ի ձեռըն սուրբ մարմնոյ և արեան քո Տէր. և պարգեւեա նոցա դասել յաջակողմեանըն քո:

Դ. Որ անճառ տնօրէնութեամբ ի փրկութիւն ազգի մարդկան խոնարհեցար Բանդ Աստուած. ║ այսօր հանգուցելոց և ըզմեր ըզննջեցեալսն ընդ սուրբըս քո. որ միայն ես մարդասէր: Որ անչարչարելի լեալդ մարմնով եկիր կամաւ ի չարչարանս և ի խաչին բեւեռեցար հեղեր զարիւնդ ի փրկութիւն. այսօր: Որ թաղման մըն երեքօրեայ ըզբռնութիւն մահու լուծեր և կոխեցեր զիշխանն մահու և վերածեր ըզննջեցեալսն. այսօր: Որ հրաւիրեցեր յանմահութիւն զազգըս մարդկան անմահութեանց բաշխող Քրիստոս աղաչանօք Աստուածածնին. այսօր:

## ՀԱՐՑ ԱԿ

ԳՈՀԱԲԱՆԵՄՔ ըզքեզ յաղթական երգով թագաւոր փառաց. որ կամաւոր խոնարհութեամբըդ քո իջեր ի փրկել ըզպատրեալսն ի ճաշակմանէ. ║ օրհնեմք ըզքեզ Աստուած հարցըն մերոց: Որ լուծեր ըզմահ և վերածեր ըզննջեցեալսն ի դժոխոց. անշըջնջե-

թեամբըն քո ի վերայ խաչին եւ իջանելով քո ի գե-րեզմանն թագաւոր անմահ. օրհնեմք: Որ նստար ընդ աջմէ Հօր եւ հրաւիրեցեր առ քեզ ըզդաւանո-ղըս քո. արժանաւորեա եւ ըզմեր ըզննջեցեալըն դա-սակից լինել սրբոց քոց. օրհնեմք:

Գ. Ըզտէր օրհնեցէք || բարձր արարէք ըզնա յաւիտեանս: Որ փառօք Հօր հանդերձեալ է գալ ի դատել զերկիր. եւ բիւրաւոր բանակըք վերին զըւար-թնոցըն կարապետք լինին գալըստեան նորա. բարձր: Որ ահագին ողորմամբ զարհուրեցուցանէ զարարածս ի գալըստեան իւրոյ. եւ քաջահընչող ձայ-նիւ փողոյն համահաւաքէ ըզննջեցեալսն որ յԱդամայ. բարձր: Աղաչեսցուք ըզկենարարըն մեր որ դա-տաւոր է կենդանեաց եւ մեռելոց. զի արժանի արասցէ ըզննջեցեալըն մեր մըտանել ի յառագաստ ընդ իմաստուն կուսանսն. բարձր:

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԱԿ

Անարատ տաճար բանականն անբաւ Բանին Աս-տուծոյ. Մարիամ սուրբ կոյս || զքեզ եւ ըզծընեալն ի քէն մեծացուցանեմք: Յարգանդին կրեցեր որ յառաջ քան զյաւիտեանս ի Հօրէ ըզԲանն. եւ ծընար մարմնով. զքեզ: Արդ խընդրեմք ի քէն անդա-դար բարեխօսել վասն անձանց մերոց. առ Որդին քո միածին փըրկել ըզմեզ ի փորձութենէ եւ յամենայն վըտանգից մերոց:

ՈՂՈՐՄԵԱ ԱԿ

Օ Արարիչ Աստուած եւ ըստեղծիչ ազգի մարդկան. || Մի անտես առներ ըզննջեցեալսն մեր. այլ հանգո-ւցո զհոգիս նոցա ընդ սուրբըս քո: Որդի միածին յա-րութիւն տիեզերաց. մի: Հոգի ճըշմարիտ մըխիթարիչ սըգաւորաց. մի:

Digitized by Google

### ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԱԿ

Ա. Ձեռըք քո արարին եւ ըստեղծին զիս ի հողոյ. ի յօրհնել ըզքեզ Աստուած յաւիտեան ։ Իսկ պատ-րանօք բանսարկուին խափանեցայ յանձառ լուսոյն. եւ դարձայ անդրէն ի հող յորմէ ստեղծայ ։ Մըխի-թարիչ սուրբ Հոգի լուսաւորեա զմեր նընջեցեալսն. եւ հանգո զհոգիս նոցա ընդ սուրբըս քո ։

Բ. Հայր անոխակալ եւ բարեգութ մաղթելով հայ-ցեմք ի քէն վասըն մեր նընջեցելոցն արժանաւորել. || հանգըստեան օթեվանի սըրբոցն ։ Անձառ ծընունդ Հօր Որդի. որ մահկանացուացս կեանքդ ես. զհոգիս նընջեցելոց մեր ընկալ եւ արժանաւորեա. հանգըստեան ։ Եւ նորոգող սուրբ Հոգի. յորժամ նորոգես զապակա-նեալսն. յայնժամ շնորհեա եւ մեր նընջեցելոցն արժա-նաւորել. հանգըստեան ։

Գ. Յորժամ յերկնից գոչէ փողն ազդեցութիւն առնելով տիեզերաց ի դատաստանն ահաւոր. յայնմ աւուր յահեղին || յիշեա Տէր եւ ըզմեր ըզննջե-ցեալսն եւ հանգո ընդ սուրբըս քո ։ Յորժամ ճառա-գայթք աստուածութեանըդ փայլեն ի յարեւելից. եւ դըպրութիւնք հրաշիծցըն բանին յայնմ աւուր յահեղ. յիշեա ։ Զարհուրեալ դողան արարածք ի ձայնէ սրովբէագոչ փողոյն. յորժամ հարկանէ հրեշ-տակապետն եւ կոչէ ի դատաստան զազգս որդւոց մարդկան. յայնմ աւուր յահեղին յիշեա ։

### ՀԱՐՑ ԲՁ

Որ թագաւորդ ես թագաւորաց. եւ բաշխող կեն-դանութեան ազգի մարդկան. այսօր մարդասիրութեամ-

բըղ քո ‖ ըզնընջեցեալըն մեր ընկա...լ եւ հան-
գո ընդ սուրբըս քո Աստըւած հարցըն ըմերոց ։ Որ
յահաւոր եւ յամպախաղաց գալըստեան քո Տէր զար-
թուցանես ըզնընջեցեալսն ի բարբառ փողոյն . յայն-
ժամ երանաւէտ կոչմամբ ըզնընջեցեալըն ։ Եւ յահագին
ձայնէ գոչմանըն զարհուրին գերեզմանք ունայ-
նացեալք . յայնժամ աստուածային լուսով պայծառացո
զնընջեցեալըն ըմե...ր եւ հանգո ։

Գ. ԸզՏէր ‖ օրհնեցէք եւ ծմ...ու բարձր արարէք
ըզնա յաւիտեան ։ Զանապականին ի Հօրէ զմըխիթա-
րիչ հոգւոյն հանգուցելոցն օրհնեցէք ։ Եւ ի բիւրաւոր
բանակըս հրեշտակաց միաւորէ զհաւատացեալս անուան
իւրոյ . դասաւորելով յաջակողմեան դասուն եւ ։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԲՁ

Ըզքեզ ամէնօրհնեալ Աստուածածին . մայրըդ լու-
սոյ և անապական Աստուծոյ Բանին ‖ մեծացուցա-
նեմք ։ Ըզքեզ պայծառ երկինք եւ ամպ լուսեղէն .
ծնող արարչին և մօրենի անկիզելի . մե ։ Ըզքեզ
դուռն երկնից և ճանապարհ արքայութեան . բարձող
անիծից և աւրհնաբեր հողեղէն մեծա ։

ՈՂՈՐՄԵԱ ԲՁ

Որ կոչեցեր առ քեզ Տէր ըզտիեզերս ամենայն . ըն-
կալ ըզմեր ըզնընջեցեալսն ի գոգ նահապետին Աբրա-
համու . ‖ ողորմած Տէր փրկիչ և բարերար ։ Որ թո-
ղութեանց ես տըւող Աստուած թող ըզմեղըս մեր նըն-
ջեցելոցըն կարող յամենայնի և հզօր . ողորմած ։ Որ
լուսաւոր ես տիեզերաց Քրիստոս Աստուած լուսաւորեա
եւ ըզմեր ըզնընջեցեալսն լուսով երանաւէտ զուար-
թնոցն . ողորմած ։

Digitized by Google

## ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԲՁ

Ա. Հրեշտակային ձայնիւն օրհնեսցուք զամենասուրբ զԵրրորդութիւնն փառաւորելով ըզՀայր. որ վերակոչեաց || զամենեսեան ի մահուանէ յանմահութիւն ։ Երգեցէք Տեառն երգ նոր եկեղեցիք սըրբեցելոց. Քրիստոսի երկըրպագելով. որ վերադասեաց զամենեսեան ։ Սըրբասաց ձայնիւն օրհնեսցուք հոգեւորական հընչմամբ գովեսցուք ։ սուրբ զՀոգին փառաւորելով. որ վերահանգոյց զամենեսեան ։

Բ. Ի ձայն փողոյ գալստեան քո Տէր ամենայն հոգիք զարթիցեն. կալ ի դատաստանի քում Քրիստոս Աստուած մեր ։ Յորժամ հընչէ բարբառն ահագին և հարկանի փող յարութեան մերոյ. եւ մեք գոչելով ասեմըք փառըք գալըստեան քո Տէր ։ Յորժամ առնես հատուցումըն Տէր և սուրբըք քո պարծեսցին ի քեզ. եւ մեզ շնորհեսցես Փըրկիչ կալ ի յաջմէ քումմէ ։

Գ. Թագաւոր անմահ արարիչ յաւիտենից. մարդասիրութեամբըդ քո խընայեա յանձինս մեր. || ստեղծիչ կենդանեաց և հանգուցիչ նընջեցելոց ։ Ի խաչին բեւեռեցար զմահու լուծեր զիշխանութիւն. յաւիտենից ըզնընջեցեալըսն վերածեր յանմահ ի կեանս. ստեղծիչ ։ Արժանաւորաց քոց աղօթիւք յիշեա ըզմեր ըզնընջեցեալսն. յորժամ գայցես անճառ փառօք հատուցանել մարդկան ըստ գործս. եւ մեր նընջեցելոցըն շնորհեա դասիլ ընդ սուրբըս քո ։

## ՀԱՐՑ ԲԿ

ԱՐԱՐԻՉ և մարդասէր Տէր. որ վասըն մեր ըզմահ ճաշակեցեր. || Տէր Աստուած հարցըն մերոց ։ Որ խոստացար հաւատացելոց նընջեցելոց յանուն քո ըզկեանս. Տէր ։ Արդ խընդրեմք ի քէն մարդասէր Տէր զհոգիս

ննջեցելոց դասեալ ընդ սուրբս քո. Տէր Աստուած:

Գ. ԸզՏէր օրհնեցէք ‖ բարձր արարէք ըզնըստեալն ի յաթոռ փառաց. անդադար հոգեւոր երգով: Որ գոլոցն է ընդ ամպս երկնից ի նորոգել զերեսս երկրի. բարձր: Ի գոչել աստուածային փողոյն զարթուցանէ ըզննջեցեալսն հանդերձ կենդանեօք. բարձր:

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԲԿ

Մայր լուսոյն. Մարիամ անհամբունացեալ օրհնեալդ ի կանայս: Զլոյսն անստուեր. յարգանդի կրեցեր օրհնեալդ ի կանայս: Մի դադարեր վասն մեր բարեխօսել օրհնեալդ ի կանայս:

ՈՂՈՐՄԵԱ ԲԿ

Որ Որդիդ ես եւ Բանդ Աստուծոյ հաւասարակից ընդ Հօր յէութեան առ քեզ կարդամք մարդասէր. ‖ հանգո զհոգիս ննջեցելոց մեր ընդ սուրբս քո: Որ իջեր յերկնից վասն մեր. զառաջինն առեր զյանցանսն Ադամայ. մերով բնութեամբ բարձեր ի վերայ խաչին անարատ ձեռօք. հանգո: Որ լուծեր զիշխանութիւն մահու. կամաւորական մահուամբ քո Քրիստոս. բանտարաց զաղաչանս առաջի քո հեղեալ մաղթեմք. հանգո:

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԲԿ

Ա. Քեզ վայելէ Աստուած օրհնութիւն որ յանմատոյց աթոռ անմահից փառաբանիս ի բարձունս. զննջեցեալսն յանուն քո ընկալ յերկնային քո սուրբ յառագաստ. ‖ որ միայնդ ես մարդասէր: Որ ունիս իշխանութիւն մահու եւ կենաց յիշեա զհոգիս ննջեցելոց մերոց եւ հանգո ընդ սուրբս քո ի խորան քում սիրողաց. որ: Որ յամենայնի ես օրհնեալ Տէր. արժանի արա ըզծառայս քո վերստին նորոգման.

ի լըսել ըզձայն աստուածային փողոյն ընդ առաջ ելա-նել քոց փառացդ. որ միայնդ ես մարդասէր։

Բ. Թագաւոր խաղաղութեան որ քաղցրութեամբ խնամես զքո զարարածս. յիշեա Տէր զհոգիս ննջեցելոցն ընդ սուրբս քո եւ դասաւորեա ի յաւուրն այցելութեան։ Որ կոչեցեր ի դրանց մահու ըզսիրե-լին քո զՂազարոս. եւ ծանուցեր զաստուածութիւնդ ընդհանուր տիեզերաց. լուսաւորեա Տէր։ Ի տա-ճարի քում սրբութեան մատուցանեմք քեզ պաղատանս արտասուալից. պայծառացո Տէր։

Գ. Ի գիշերաց կանխեալ սաղմոսիւք եւ արտասուօք հայցեմք ի քէն Քրիստոս յիշեա զննջեցեալսն ի սուրբ անունդ քո. եւ հանգո զհոգիս նոցա ընդ սուրբս քո։ Որ յանմարմնոց վերօրհնիս առ քեզ կարդամք եւ պաղատիմք Քրիստոս։ Որ մարմնացար վասն մեր. աղաչանօք Աստուածածնին Քրիստոս։

Դ. Որ հայրդ ես բարեխնամ. գթա ի մեր ննջե-ցեալսն եւ պարգեւեա մեզ. փառըս տալ անուանդ քում սրբոյ։ Որ հրաւիրողդ ես կոչեցելոց. ընդ աջմէ դասե-լոցն կարգեա եւ ըզմեր ննջեցեալսն. եւ պարգեւեա։ Որ նորոգողդ ես ազգի մարդկան. արա արժանի եւ ըզմեր ըզննջեցեալսն ընդ բազմելոցն Աբրահամու. փառ։

Ե. Գալոց է Միածինն փառօք եւ փառօք հօր. եւ ըզհողեղէն բնութիւնս հրեղէն նորոգէ։ Լուսաւորք են ճանապարհք արդարոց. եւ ի բերկրաւոր բանակըս հրեշտակաց ամպովք ընթանան։ Ի վերինն Երուսաղէմ թռչին ամպովք ընդ առաջ Տեառըն յօդս. եւ այնպէս յամենայն ժամ ընդ Տեառըն լինին։

Զ. Հաւատ ունելով հոգի խաղաղութեան. երթ առ արարիչըն հայցելով Աստուած իմ հանգո։ Որ ետուր

հոգի Յիսուս ըզդաս պանծեա զի քոյ խաչի և յարութեա-նըդ հաւատաց. թագաւոր երկնաւոր հանգո զհոգի սո-րա յիշելով զսորա զհաւատս : Ի քաղաքն Տեառն զօրու-թեանց և ի քաղաքն թագաւորին մեծի. ուր ժողովք սրբոցն են ի խաղաղութեան. զնմանցես յուսով և հան-գիցես ընդ հրեշտակաց դասս. տեսանել ըզլոյսըն յաւիտենից :

Է. Մերձեցաւ անձն իմ ի հող յորմէ ստեղծեր զիս և հոգւոյս մեկնեալ յինէն. | Տէր զապաւինեալըս յի-շեա ի քում գալըստեանն : Ստեղծուած եմ անարատ ձեռաց քոց մի անտես առներ. այլ խնայեա յիս յահա-գին աւուրն. Տէր : Յորժամ գաս փառօք Հօր դատել ըզտիեզերս ամենայն և հարկանի փող հընչման յարու-թեան. Տէր :

Ը. Ի գալըստեան Տեառըն դրունք երկնից բանին. և ճառագայթիւք անճառ լուսով սուրբ խաչն երևի : Յերևման Տեառըն լերինք հալին. և ի յահէ փա-ռաց նորա շարժին զօրութիւնք : Աւետեօք Տեառըն մեռեալք յառնեն. և սուրբք ամենայն անճառ փառօք զարդարին :

Թ. Գայ զօրութեանց թագաւորն. ի նորոգել զարա-րածս. ի ձայն ահեղ բարբառոյ զարթուցանէ զննջե-ցեալսն : Դողան երկինք և երկիր յահէ փառաց Քրիստոսի. հուր բորբոքեալ ընթանայ բոցակիզէ զմեղաւորսն : Նորա փեսաւուր զարդարին դասք սըրբոց կուսանացն. ուրախութեամբ մըտանեն ի յառագաստ փեսային : Ի քեզ եմք ապաւինեալ ամէն օրհնեալ Սըրբուհի. լեր բարեխօս անդադար վասըն մերոյ փըր-կութեան :

Ժ. Սարսափելի որոտմամբ և ահագին զօրութեամբ.

գալոց է փրկիչն յաշխարհս յարուցանել զմեռեալս։ Ահեղ եւ մեծ բարբառով հրեշտակապետըն գոչէ. արիք ասէ մի ննջէք ահա եհաս ձեր փրկիչն։ Բոլո-մամբ սրբովք յարուցեալ եւ ընթանան առաջի. եւ տեսանեն զփրկիչն եկեալ փառօք ի յաշխարհս։ Գաղտնի գործոցըն ծածուկք յայտնին ի մեծ հրապարակն. եւ դողալով ընթանան ի յանվախճանն ի տանջանս։ Ի յօթեւանս չորն ճիւրոյ կոչէ զգաստ արդարոցն. եւ յանպատում ի բարիսն զոր խոստացեալ է նոցա։ Սիրով անմահ փեսայիւն եղեր դու մայր Մարիամ. բարեխօսեա վասըն մեր ի յաւուր ահեղին։

## ՀԱՐՑ ԳԶ

ՕՐՀՆԵՄՔ զքեզ Հայր անսկիզբըն ստեղծիչ ամենայն եղելոց. զխոստովանողս սուրբ անուանըդ քո զննջեցեալըն հանգո յարքայութեան քում. ‖ Աստուած հարցըն մերոց։ Գովեմք զքեզ անճառ ծնունդ Հօր անսկիզբնակից Որդի. որ մահու խաչի համբերեցեր վասըն մեր. զննջեցեալսն ի քեզ ուղիղ հաւատով պայծառացո ընդ սուրբս քո. Աստուած հծ։ Բարեխնամ սուրբ Հոգի. փառակից Հօր եւ Որդւոյ հայցեմք ի քէն. զննջեցեալըն ճշմարիտ հաւատով սուրբ Երրորդութեանդ ի միւսանգամ նորոգմանըն դասեա ի դաս ընտրելոց քոց. Աստը։

Գ. Ըզտէր ‖ Միաբանական ձայնիւ ժողովուրդք առաւել բարձր արարէք ըզնա յաւիտեան։ Որ գալոցն է փառօք Հօր միածին Որդին. ձայնիւ աստուածային փողոյն անէ աս յարութիւն որդւոց մարդկան. միաբանական։ Որ անէ հատուցումն ըստ իւրաքանչիւր

գործոց. դատաւորըն կենդանեաց եւ մեռելոց. եւ փառաւորէ զգալիրելին իւր պայծառացեալ ի կամարըս լուսեղէնս. քահանայ սմ̃ւթք մատուցեալ:

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԳՁ

Սուրբ զԱստուածածինն. օրհնութեամբ մեծացուցանեմք: Աւետաւոր հրեշտակն աւետարանէր. ըզծընեալ փրկիչն ի սրբոյ կուսէն: Ասէ ուրախ լեր բերկրեալդ. քանզի Տէր տերանց է ընդ քեզ:

ՈՂՈՐՄԵԱ ԳՁ

Հայր բարեգութ. որ գթացար ի յազգս որդւոց մարդկան. առաքեցեր զՄիածինդ ի փրկութիւն ‖ յիշեա՛ զհոգիս ննջեցելոց մերոց և հանգո ընդ սուրբըս քո: Որդիդ միածին որ յարեար ի մեռելոց. ի միւանգամ գալըստեանն քո յարութիւն մեզ խոստացար. յիշեա՛: Հոգիդ ճըշմարիտ մխիթարիչ սըգաւորաց. աղաչանօք սուրբ Աստուածածնին եւ ամենայն քոց սրբոց. յիշեա՛:

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԳՁ

Ա. Ի ձայն մեծի զուարթնոյն և ի հընչումըն հրաշալի փողոյն. ուր հողացեալ մարմինք մարդկան նորոգին. ‖ յայնժամ աւուր ահեղին յիշեա Տէր և զմեր զննջեցեալսն եւ հանգո ընդ սուրբըս քո: Յորժամ նըշան տէրունեան ճառագայթիւք փայլէ. և թագաւորըդ թագաւորաց փառօք տեսանի. յայնժամ: Յորժամ ատեան դատաստանին դընի. և դըպրութիւնք հրաշէկըն բանին. յայնժամ:

Բ. Որ երկայնամիտդ ես Տէր. քաղցր և անոխակալ հանգո զհոգի քո ծառայից. զի մի դարձցի տնանկ ամաչեցեալ յաւուրն ահեղ ատենին: Զյիշատակ հրաժարելոցն ի հաճոյս քեզ ընկալցիս. եւ զխոստըս մեր

Digitized by Google

դրախտին բացող բանալի. Քրիստոսի բարձող նըշմանող երկնից. սափոր ոսկեղէն լի մանանայիւ. գաւազան ծաղկեալ յարմատոյն Յեսսեայ. տաճար լուսոյ մայր. || ան. ծննեալն ի քէն միշտ բարեխօսեա անդադար հայցմամբ. շնորհել զթողութիւն մեր ննջեցելոցն ։ Ցօղ քաղցրածաւալ ցանկալի զուարթնոցն. նիւթեղէն սրովբէ գեղ մարգարտափայլ հիմն եկեղեցւոյ. մաքուր աղաւնի անմեղ հովանաւոր սուրբ կոյս Մարիամ. ան ։

ՈՂՈՐՄԵԱ ԳԿ

Յանըսկըզբնական ծոցոյ Հօր խոնարհեալ Բանըդ. մարմնացար ի կուսէն վասըն փըրկութեան մերոյ || աղաչեմք ըզքեզ. զննջեցեալսըն մեր ի քեզ ուղիղ հաւատով. յիշեա Տէր յորժամ գաս թագաւորութեամբըդ քո ։ Անոխակալ քաղցրութեամբ Որդի Աստուծոյ. հաճեցար բառնալ ըզմեղս աշխարհի քո խաչելութեամբն. աղաչեմք ։ Կամաւորական մահուամբ քո լուծեր զերկունըս մահու. եւ արժանի արարեր թողութեան յանցանաց քաւիչ քո արեամբ. աղաչեմք ։ Որ փոխանակ մեղաւորաց ըզմեռանիլ յանձն առեր. իջանելով ի դըժոխըս փըրկեցեր ի մեղսաւէր բանտէն ըզգերեալսն. աղաչեմք ։ Բարեբանեմք զանչափ քո զմարդասիրութիւնդ. որ երեքօրեայ յարուցեալ զկենդանութիւն պարգեւեցեր աշխարհի. աղաչեմք ։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԳԿ

Ա. Լոյս ի լուսոյ զմեզ լուսաւորեա. որ փառօք Հօր համբարձեալ ես գալ ի դատել զերկիր. || արժանաւորեա եւ ըզմեր ըզննջեցեալսն. անճառ խոստմանց քոց ընդ սուրբըս քո ։ Հօր եւ Հոգւոյ համագոյակից. ի տիեզերական ահեղ ատենին. արժանաւորեա ։ Երկնի եւ երկրի արդար դատաւոր. յորժամ հատուցանես ըստ գործոց իւրաքանչիւրոց. արժանաւորեա ։

Digitized by Google

Բ. Որ արարիչդ ես հրեղինաց եւ հողեղինաց. եւ մըշտընջենաւոր փառաւորանիս ի բանաւոր պաշտօնէից. Եւ ի քէն հայցեմք թողութիւն շնորհեա նընջեցելոց մերոց: Որ ի յերկրի երեւեցար եւ ընդ մարդկան բընակեցար. եւ անմահութիւն պարգեւեցեր մեզ մահացելոցս. ի քէն: Ցարժամ նըստիս յաթոռ փառաց դատողական իշխանութեամբ. եւ փառաւորեսա ի քէն փառօք ըզզգի նոր արեան քո Տէր. ի քէն:

Գ. Որ անբաւ քո մարդասիրութեամբդ. գըթացեր յազգըս մարդկան ծընար ի կուսէն. ըզծընեալս. սուրբ աւազանաւն Եւ ըզննջեցեալսըն մեր ընդ սուրբըս քո հանգո թագաւոր յաւիտենից: Որ ի վերայ խաչին զենար որպէս գառն. եւ զմարմին եւ զարիւնըդ քո բաշխեցեր ի փրկութիւն աշխարհի. զհաղորդեալս մարմնոյ քո եւ արեան ըզնըն: Որ ըստ նըմանութեան մահու քո որ նկանկից արարեր. եւ երկնից արքայութեանըդ ժառանգորդ լինել խոստացար. զհաւատացեալս զալըստեան քո Տէր ըզնընջեցեալսըն:

Դ. Փառըք քեզ Աստուած փառաւորեալ յաւիտեան. որ կենարարդ ես մարմնոց եւ գոյացուցիչ հոգւոց մեր նընջեցելոցն: Որ բարձրացար ի խաչին վասն Ադամայ նորոգման. եւ իջանելով քո ի դըժոխս աւար առեր ըզգերեալսն: Ըզգինս արեան քո յիշեա կենագործող աշխարհի. եւ հանգըստեան արժանաւորեա յերուսաղէմըն վերին:

Ե. Ընդ զըւարթունս երկնից օրհնեցէք ըզննջեցեալըն ի յաթոռ փառաց. զի հանգուսցէ ըզնընջեցեալ ծառայս իւր յաւիտենից. Ի միաւանգամ փառաց իւրոյ գալըստեանն: Ընդ սերովբէիցըն սըրբամաց ձայնիւ գովե-

ցէք զՈրդին միածին. ‖ զի հանգուսցէ ընդ ննջեցեալ ծառայս իւր յաւիտենից. ի միւսանգամ փառաց իւրոյ գալստեան։ Ընդ քերովբէիցն փառաբանութեանց բարեբանեցէք զՀօրդին ճշմարիտ. զի։

## ՀԱՐՑ Դ Ձ

Որ փառօք Հօր համագերծեալ ես գալ ի դատել զերկիր արեգակն արդարութեան. զի ընդհողեղէն ընդ բնութիւնս մեր վեր առեալ նորոգեցես ի կեանս. ‖ ընդ ամենայն քո Տէր Աստուած հարցն մերոց։ Որ աստուածային բարկութեամբ դատես ընդհընացեալըս մեղօք լուսատու տէր եղերաց. լուսաւորեա և զմեր ննջեցեալսն աննմանելի աստուածային լուսովդ. ընդ ամենայն։ Որ նստես ի վերայ բազմաչեայ քերովբէից թագաւոր խաղաղութեան. հանգո և զմեր ննջեցեալսն ի վերինն քո Եդեմաղէմ. ընդ ամենայն։

Գ. Ըզ Տէր ‖ օրհնեցէք եւ բարձր արարէք զնա յաւիտեան։ Որ յանհեղակերպ հայրենի կառս. ընդ Հօր փառակից կենդանին յաւիտենից. եւ իշխանութեամբ դատիս զամենայն արարածս. օրհ։ Միաբան հայցեմք ի քէն սուրբ Հոգիդ կենդանարար. աղաչանօք սուրբ Աստուածածնին արարչին արժանի և զմեր ննջեցեալսն մտանել ի յերկնային քո սուրբ յառագաստ. եւ ընդ վերին զօրսն օրհնել [illegible] սուրբ զԵրրորդութիւնդ։

## ՄԵԾԱՑՈՒՍՑԷ Դ Ձ

Բազմերամք վեհագունիցն հոյլքն յոգնախումբ եղանակէին. երգս առեալ մատուցանեն զերաժշտականաց զերանաւէտ զհոգեղէն հնչմունս. ‖ քեզ զԷմմանուէլ որ ծնար տղայաբար եւ վերածեր զազգս մարդկան Հօր յորդեգրութիւն.

աղաչանօք հայցեմք ի քէն ընդընձեցեալըն մեր ընդ սուրբըս քո հանգո։ Գեղգեղեալ գովեն ըզքեզ զՏրապայծառ ու դասք հոգեղինաց. հեզաբար թեւապարել պարունակեալ ծածկեն ըզդէմս յահէ փառաց քոց. քեզ։ Զնոյն և մեք երգեմըք քեզ բարունական ձայնիւ ղերգըս հոգեւորս. աղերսելով քեզ պատարագ ասկէ կընդրել զըմուսս և զհալուէս քեզ։

ՈՂՈՐՄԵԱ ԴՋ

Ցօրժամ հարկանի փող զարթուցման քո Տէր. յայնըժամ զարհուրեալ դողան արարածք ի յահէ քումմէ. ‖ աղաչեմք ըզքեզ փըրկիչ. հանգո և ըզմեր ըննըննջեցեալսն ընդ սուրբըս քո. որ միայն ես բազումողորմ։ Ցանհարեկ լուսոյ ծագման քո Տէր. ցընծան դասք առաքինեացն ի վերայ լուսեղէն ամպոյն. աղ։ Անմխական բազմագութ ողորմած Տէր. մի անտես առներ ըզմեղուցեալըս յահագին աւուրն. որ միայ։

ՏէՐ ՅԵՐԿՆԻՑ ԴՋ

Ա. Քանզի զքեզ օրհնեն իշխանութիւնք երկնից թագաւոր փառաց. ամենակալ ամենակարող թող ըզմեղըս մեր ննջեցելոցն ‖ և հանգո ի խորանի քում ի յարքայական ի հանգըստեան։ Որ ի նախնումն ըզմարգարէն Մովսէս. լուսաւորեցեր աստուածային փառօք տեսլեամբ աստուածութեանըդ քո. լուսաւորեա և ըզմեր ըզննջեցեալսն և հանգո։ Բարեխօսութեամբ սուրբ Աստուածածնի ծընողի և մօր քո. յիշեա զգինս արեան քո Տէր. և դասաւորեա յերանաւէտ յանթառամ և յանտըրտում ի կեանսդ. ի յար։

Բ. Փառըք քեզ Հայր. որ կենարարդ ես մարմնոց և զուարճացուցիչ հոգւոց. ընկալ զօրհնաբանող հոգիս

յանմահական քո հանգիստդ։ Մարդասէրն Հօր Որդի. որ պատկերակից եղեր հողեղինացս եւ խաչեցար. ‖ ընկալ զօրհնաբանող հոգիս յանմահական քո հանգիստդ։ Ամենազօր սուրբ Հոգի. որ անդորրիչ ես նեղելոց եւ մխիթարիչ հոգւոց. ընկալ։

Գ. Ի հանգիստ քո Տէր. ուր ամենայն սուրբք քո հանգչին հանգո զհոգիս ծառայից քոց ընդ սուրբս քո մարդասէր։ Դու Աստուած որ իջեր ի դժոխս. զերկուորս մահու լուծեր ըզկապեալսն արձակեցեր եւ զհոգիս ծառայից ‖ քոց ընդ սուրբս քո հանգո մարդասէր։ Ընդ հոգւոցն արդարոց կատարելոց եւ զհոգիս ծառայից քոց։

Դ. Ժամանակ դարձի իմոյ եհաս ի յերկիր. ‖ արդ Տէր ընկալ ըզծառայս քո. եւ հոգի քո բարի առաջնորդեսցէ ինձ ի յերկիր ուղիղ։ Խոստովանող հոգիս որ ելից զունայնութեան ընթացս աշխարհի. արդ։ Ի վերջնում աւուր մեծի յորժամ առնես այցելութիւն քոյոց սիրողաց յայնժամ խնայեա ի ծառայս քո. եւ հոգի։

Ե. Գթա Տէր ի հոգիս մեր ննջեցելոցն. եւ յիշեա ողորմութեամբ. քանզի զինչ սուրբ արեան քո են. ‖ Ի յորժամ հրաշալի ձայնիւ փողոյն. յառնեն մեռեալքն եւ կան առաջի ահաւոր քո բեմին։ Զընկղմեալքս յահագին մեղաց ծովուս. ապրեցո ի գեհենոյն. ըզդաւանողքս սուրբ Երրորդութեանդ. Ի յորժամ։ Զլուսաւորեալքս ծնընդեամբ սուրբ աւազանին. մի բարկութեամբ խրատեր. եւ մի սրտմտութեամբըդ քո յանդիմաներ. Ի յորժամ։

Զ. Բարձրեալ Թագաւոր յաւիտենից. հայր անըսկիզբն. որ զՄիածինդ առաքեցեր ի փրկութիւն ազգի

մարդկան. || աղաչեմք ըզքեզ յիշեա զհոգիս ննջեցելոց մերոց եւ հանգո ի քում ը յարքայութեանդ։ Բանդ Աստուած երեւեալ մարմնով յերկրի. քահանայապետ ճշմարիտ. որ ի վերայ խաչին պատարագեալ բարձող մեղաց զաւռն անարատ. աղաչեմք։ Երանական շնորհաց բաշխող. սուրբ Հոգիդ ճշմարիտ. որ վերնատին ծննդեամբ աւազանին կոչեցեր յորդեգրութիւն ըզպատուիրողս. գըթութեամբըդ քո. նորոգեա զհոգիս ննջեցելոց մերոց եւ։

Է. Հայր անըսկիզբն արարիչ յաւիտենից առ քեզ կարդամք և պաղատիմք || հանգո զննջեցեալսըն մեր ի սուրբ անուներդ քո։ Որդիդ միածին. էակից Հօր և Հոգւոյ ի միւսանգամ քո գալըստեանն հանգո։ Հոգիդ ճշմարիտ. փառակից Հօր և Որդւոյ. աղաչանօք Աստուածածնին հանգո։

Ը. Որ հայրական իշխանութեամբ եւ փառօք գալոց ես Տէր նըստելոց էս դատաւոր. հանդերձ քո առաքելովք || եւ անձինս ըզհատուցումըն քո պարարածոց։ Որ լուսափայլ ճառագայթիւք նըշանաւ սըրբոյ խաչին յահաւոր բեմին բազմիս. եւ ընտրես զօդիս յայծեաց և անձինս։ Արդ աղաչեմք ըզքեզ Քրիստոս Որդի Աստուծոյ հանգո զմեր ննջեցեալսն. ի վերին Երուսաղէմ. զի մի դարձցի տընանկ ամաչեցեալ. ի յահաւորն ահեղ ատենին։

Թ. Ժողովեալքս ի տաճար փառաց սըրբութեանդ. խոնարհեալ անձամբըք պաղատիմք. դատաւոր կենդանեաց եւ մեռելոց Քրիստոս Որդի Աստուծոյ յայնմ աւուր յահեղին. լուսազարդեալ պայծառացո զհոգիս մեր ննջեցելոցն. ի վերինն Երուսաղէմ ի յաջակողմեան դասուն։ Մեծ եւ ահեղ է օր գալըստեան քո

Տէր. յորժամ շարժին զօրութիւնք երկնից. արեգակնակերպ ճառագայթիւք փայլես ի յարեւելից. յայնմ աւուր յահեղին. լուսազարդեալ պայծառացո զհոգիս մեր ննջեցելոցն. ի վերինն Երուսաղէմ ի յաջակողմեան դասուն: Յորժամ հարկանի փող գալըստեան քո Տէր. ի յայնըմ ժամու և երկիրս դըղըրդեալ վերաբերէ ըզննջեցեալսն որ յԱդամայ. յայնժամ:

Ժ. Զահահագին համբաւ գալըստեան քո Տէր. ըզմըտաւ ածեմք զարհուրիմք ի յերկիւղէն ի սպառնալեաց գեհեննոյն. աղաչեմք ըզքեզ Փըրկիչ. հանգո և ըզմեր ըզննջեցեալսն ընդ սուրբըս քո. որ միայն ես բազումողորմ: Յորժամ Գաբրիէլ հարկանէ ըզտիեզերալուր ըզբարբառ փողոյն եւ նորոգին հոգիք ընկալեն զիւրաքանչիւր տեղիսն. աղաչեմք: Ատեանըն դնի և դըպրութիւնք հրաշիցըն բանին. եւ դատաւորն ահեղ յակնարկելն իւր յարարածս հատուցանէ վարձս ըստ գործոց իւրաքանչիւրոցն. աղաչեմք:

ԺԱ. Ահագին է օրըն դատաստանին. եւ դողդողառաջի բեմին սարսափեն հրեշտակք սասանի երկիր. ըզննջեցեալսըն մեր մի՛ անտես առներ. յահագին աւուրըն դատաստանին. բարեխօսութեամբ սուրբ Աստուածածնին: Բանին դրունք երկնից բարբառեն հրեշտակք. բանին գերեզմանք բորբոքի գեհեն. ըզննջեցեալսըն: Գալարին երկինք որպէս մագաղաթ. գերագոյն գոչէ փող գաբրիէլեան. գերապանծ լուսով զարդարին արդարքն. ըզննջեցեալսըն:

ԺԲ. Մերձեցայ ես ի դուռըն գերեզմանի. եւ եհաս ինձ ժամանակ. մըտանել ի յարգանդ երկրի յորմէ ստեղծեալ եմք ամենեքեան. Բըժիշկ իմաստուն եւ ճարտարապետ. բըժըշկեա զհոգւոյ իմ զհիւանդութիւն.

արարող և յոյս փրկութեան մերոյ։ Եղիցի ձեռըն քո պահապան անձին իմոյ. և աջ քո բարի առաջնորդեսցէ ինձ ի յարդարութիւն. բըժիշկ։ Բըղխեսցես առ իս ըզգութ մարդասիրութեանդ. և յաղբերէդ կենաց ըռոգեսցես զմեղս անձին իմոյ. բըժիշկ։ Կեցցէ անձն իմ օրհնեսցէ ըզքեզ. զամենայն աւուրըս կենաց իմոց. և առ քեզ ապաւինիմ։ Հովիւ բանաւոր հօտի դարձո ըզմոլորեալս ի հօտ քո Քրիստոս. բըժիշկ։

ԺԳ. Անըսկիզբն Աստուած սկիզբն արարչութեան ի հողոյ ստեղծեր ըզմարդն առաջին գործել և պահել յանպատում ի կեանս. իսկ ի ստորնգանել հրամանի քո Տէր ըզվըճիռ մահու ի վերայ եդեալ. հող էիր անդրէն և ի հող դարձցիս. || և այժմ աղաչեմ զստեղծողդ ամենից ընկալ և հանգո զհրաժարեալ հոգիս. յերկնաստեղեան լուսեղէն խորանսն ուր ժողովքն են սըրբոցն ի խաղաղութեան. հոգւով հեզութեամբ յերկնից բարութիւնսն։ Ոսկի եղեալքս անպիտանացան. զեղեցկայարմար շինուածոյս քակտումն. իմաստունըս յիմարեցայ ի յալեաց մեղաց որ ընկըղմեցայ. և այժմ։ կոչմըն եհաս վերին կոչողին կոչնատէրն ահեղ կոչողն ահաւոր. դատաւորն անաչառ դատաստանն արդար հրեշտակք անողորմ դատին զմեղաւորս. և այժմ։

ԺԴ. Մեծ և ահեղ է օրըն դատաստանին. և դողումն առաջի բեմին ի լըսել ըզձայն փողոյն և ըզհընչումն ահագին հըրոյն։ Սարսափմամբ սասանի երկիր և դողան արարածք. և Գաբրիէլ հընչեցուցանէ ըզահեղահրաւէր ըզբարբառ փողոյն. և հոգիքըն զգենուն զանապական մարմինսն։ Խաչըն փայլէ յարեւելից եօթընպատիկ պայծառ քան զարեգակն. պայծառանան արդարքն և մեղաւորքըն ծածկին յանըստուեր

լուսոյն . եւ ճառագայթ սուրբ խաչին առաջի քո զայս մաքրէ տեղի քեզ իջեւանի . Ի յայնմ աւուր յահեղին ողորմեա հոգւոց մեր ննջեցելոց :

## ՀԱՐՑ ԴԿ

ՅԱՐԻՍՏԵՆԻՑ Աստուած և արարիչ ամենայնի . որ մահկանացուացս կեանք եւ անմահութիւն . ‖ Ընդ քեզ բարեբանեմք Աստուած հարցն մերոց : Որ սպասաւորեալդ ես ի սերովբէից զգեցար զծառայի կերպարանս . եւ խոստացար հաւատացելոց ննջեցելոց յանուն քո ընդկեանս . Ընդ քեզ : Արդ խնդրեմք ի քէն Քրիստոս արարչակից Հօր եւ սուրբ Հոգւոյն . որ դատաւորդ ես կենդանեաց եւ մեռելոց զհոգիս ննջեցելոց դասեա ընդ սուրբս քո . Ընդ քեզ :

Գ . Ընդ Տէր օրհնեցէք ‖ Առաւել բարձր արարէք ընդ յաւիտեանս : Որ գալոցն է ընդ ամպս երկնից ի նորոգել զերեսս երկրի . եւ զարթուցանէ զննջեցեալսն հանդերձ ամենայն սրբովք . ա ռա : Միաբան աղաչեսցուք ըզթագաւորըն մեր Քրիստոս . զի արժանի արասցէ զննջեցեալսն մեր մտանել ի յառագաստ ընդ իմաստուն կուսանսն . ա ռա :

## ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԴԿ

Աստուածածին մայր եւ կոյս . ծաղիկ արեգական արդարութեան որ լուսաւորեաց զմեզ . ‖ Հոգեւոր երգով զքեզ բարեբանեմք եւ փառաւորեմք զմիածին քո զՈրդին : Եւ լոյծ զօրէնս բնութեան մարդկան . հրաշափառ քո ծնունդ . եւ զէութիւն բնութեանն ամբողջ պահեալ եւ կուսութեանդ քո ոչ խախտեցան

Digitized by Google

կընիք. հոգւոր: Զքեզ մորենի անկէզ. լեառըն վի-
մածին դուռըն փակեալ եւ աղբիւր կընքեալ. Նախա-
տեսանցըն գուշակեալ մայր եւ կոյս. հոգւոր:

ՈՂՈՐՄԵԱ ԴԿ

Ա. Ո՛ր թագաւորդ ես յաւիտենից Քրիստոս Աստը-
ւած ընկալ ըզծառայս քո ի բարի. եւ շնորհեա. ի
յաջակողմեան քում դասին: Ո՛ր ունիս իշխանութիւն
մահու եւ կենաց հանգո զհոգիս քո ծառայից. եւ:
Ցորժամ կարգիս աթոռ տէրութեանըդ քո եւ հաստա-
տես ատեան դատաստանին. յայնըժամ խընայեա ի
ծառայս քո. եւ:

Բ. Ողորմութեանց տըւող Քրիստոս ի միւսանգամ
քո գալըստեանն. շնորհեա եւ մեր ննջեցելոցըն կալ ի
յաջմէ քումմէ որ ողորմածդ ես յամենայնի: Ցոր-
ժամ զանմահութիւն կենաց շնորհես եւ ի կեանըս
հրաւիրես. ընդ կամարարս անուանըդ քո ըզննջեցեալ-
սըն մեր դասաւորեա. որ ող: Ընդ սուրբըս քո դասեա
եւ ընդ արդարըսըն պըսակեա. ի տեղի անկելոց հրեշ-
տակաց ըզննջեցեալսըն մեր կարգաւորեա որ ողոր:

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԴԿ

Ա. Հայր անըսկիզբըն բարեխնամ մարդասէր. որ
ստեղծիչդ ես հոգւոց եւ մարմնոց. յիշեա զննջեցեալ-
սըն մեր եւ հանգո ընդ սուրբըս քո: Որդիդ միածին
որ գըթածդ ես առ ամենեսեան. եւ խաչիւ եւ արեամբ
գնեցեր ըզքո ժողովուրդս. յիշեա զգինս արեան քո
Տէր եւ հան: Հոգիդ ճըշմարիտ. որ աղբիւրդ ես ա-
նըսպառելի. եւ լըցուցիչ ամենայն բարութեանց. յիշեա
զննջեցեալսըն մեր եւ հանգո:

Բ. Խընդրեմք ի քէն թագաւոր փառաց փառաւո-
րեալդ ի զուարթնոց. ըզննջեցեալսըն մեր ընկալ

մարդասէր Տէր. եւ հանգո ընդ սուրբս քո։ Ցորժամ գաս փառօք Հօր դատել զերկիր արդարութեան արեգակն. ‖ ըզնընջեցեալսն մեր ընկալ մարդասէր Տէր. եւ հանգո ընդ սուրբս քո։ Ի նստել քո յաթոռն դատաւոր անհեղ Քրիստոս փրկիչ մեր եւ յոյս. ըզնըն-ջեցեալսն։

Գ. Ո՞ր արարիչդ ես արարածոց հանգուցեալդ ի հրեղէն կառս. ‖ յիշեա՛ զհոգիս ննջեցելոց մերոց եւ հանգո ընդ սուրբս քո։ Ո՞ր երկայնամիտդ ես առ ամենեսեան. եւ ներող յանցանաց մերոց. յիշեա՛։ Ո՞ր միւսանգամ գալոց ես հայրենի փառօք. նորոգել զնախաստեղծին ծընունդ. յիշեա՛։

Դ. Թագաւոր փառաց Քրիստոս անմահութեանց բաշխող. ի փառաւորեալ գալըստեանն քո. արժանաւորեա ըզնըննջեցեալսն մեր. դասակից լինել սըրբոց քոց. ‖ մարդասիրապէս. որ ես միշտ ի յաթոռ փառաց։ Զորս հաւասարեցեր ընդ սուրբս քո. հաղորդել մարմնոյ եւ արեան քո Տէր. այսօր ընկալեալ հանգո զհոգիս նոցա. կենագործելով ի կեանսըդ յաւիտենից. մարդա։ Ցորժամ առնես զհատուցումըն Տէր և սուրբքըդ քո պարծեսցին ի քեզ. յայնժամ խընայեա ի դաւանողս քո. դասաւորելով յաջակողմեան դատին. մարդասիրա։

Ե. Թագաւոր փառաց Քրիստոս յոյս ազգի մարդկան. անհասանելի քո զօրութեամբդ իջեր ի յերկնից կենագործելով զանարատ ձեռաց քոց ստեղծուածս ‖ զապաւինեալսն ի քեզ. զհոգիս ննջեցելոց մեր ընկալ յանտըրտում ի կեանսդ. որ օրհնիս երգով ի հրեղէն զըւարթնոցն։ Ի յերեւել հրաշից արփիահրաշ փայլմամբ. ի քառակերպեան նըշանի քո Տէր. եւ զօրք

Digitized by Google

երկնից ի յերկիր ծաւալին․ զամպա ։ Ի հարկանել փողոյ հրեշտակապետին մեծի․ ի բանալ գերեզմանացըն զարթիցեն մեռեալքն անապական մարմնով զարդարին ընդ առաջ քո Տէր․ զամպա ։

Զ․ Որ ի հօրէ առաքեցար մարդասէր կարող փըրկիչ․ եւ ըզմեղուցեալ ըզմարդըն բըժըշկեցեր․ Ողորմեա Տէր հրաժարելոյս զոր հրաւիրեալ առ քեզ կոչեցեր ։ Որ ի խաչին բեւեռեցար մարդասէր կարող փըրկիչ․ եւ ըզցօղ անապական արեանըդ ցօղեցեր տիեզերաց․ ողորմեա ։ Որ ըզդըժոխս աւերեցեր և ըզգերեալըսըն փըրկեցեր․ եւ զարգելեալըսըն վերածեր ի յոյս կենացըն յարութենից․ ողորմեա ։

Է․ Ես ասացի Տէր ողորմեա․ հոգւոյ իմոյ բազմամեղի․ որ բնակեալդ ես ի յերկինս եւ յանմարմնոց փառաբանիս․ Այս մարդասիրեալ բազմագութ փըրկիչ․ եւ փարատեցո զցաւս անձին իմոյ ։ Պակասեցայ յազգատոհմէ․ լըքեալ թողի զկեանս աշխարհի․ եւ մարմին անյիշութեան դարձաւ ի հող ուստի ստեղծաւ․ յիս ։ Յաւուր յայնմիկ մատնեցայ ի ձեռս ահեղ հրապարակին․ եւ առ քեզ ապաւինիմ ստեղծող բնաւից Տէր բոլորից․ յիս ։ Հայեցայ ի բարձունս առ քեզ կարող յամենայնի․ ընկալ զիս յարկս արդարոց ամբածածուկ աջովըդ քո․ յիս ։ Ահա ի խաղաղութիւն․ դարձայ ի հող յորմէ ստեղծայ․ Նորոգող ճարտարապետ պարգեւատու ողորմութեան․ յիս ։ Այլ կենդանիքս օրհնեմք ըզքեզ Քրիստոս թագաւոր յարութենից․ որ փառօք փառաւորիս ի յերկնայնոց և յերկրայնոց․ յիս ։

Digitized by Google

## ՄԱՆԿՈՒՆՔ

# ԽԱՉԻ

### ՑԱՒՈՒՐՍ ՈՒՐԲԱԹՈՒՑ



### ԱՁ

Ա․ Ո՛ր զանարատ բազուկըս քո ի խաչին տարածեցեր Քրիստոս Աստուած․ եւ նշան յաղթութեան ետուր մեզ․ ‖ սովաւ ըզկեանըս մեր պահեա։ Ո՛ր զաշխարհակեցոյց բազկատարածութիւն խաչի քո Քրիստոս Աստուած․ գաւազան զօրութեան ետուր մեզ․ սովաւ։ Ո՛ր ըզմեռեալըս ի ճաշակմանէ փայտին յանցանաց․ կենաց փայտիւըն կենագործեցեր․ սովաւ։

Բ․ Սուրբ խաչն օգնական հաւատացելոց․ կանգնեցաւ ի յերկրի յաղթող թշնամւոյն․ Եկայք ժողովուրդք երկրպագեսցուք։ Արարիչն Աստուած բարձրացաւ ի խաչին․ եւ զմեռեալըս մեղօք փայտին ճաշակմամբն․ ի սմա նորոգեալ կենդանացոյց։ Ի միւսանգամ գալըստեան Աստուածորդւոյն․ սուրբ խաչն երեւի եւ լուսաւորէ․ զի նշան է յոյս հաւատացելոց։

Գ․ Հրաշակերտ և զօրեղ փայտ խաչի քո Քրիստոս․ գաւազան զօրութեան ի յերկրի երեւեալ․ ‖ Եկայք ժողովուրդք երկրպագեսցուք։ Զոր հրէիցըն ծածկեալ զանթաքչելի ըզգանձըն․ փափագմամբ թագուհւոյն փայտ կենաց յայտնեցաւ․ եկայք։ Սա է զէն յաղթութեան հաւատացելոց․ ախոյեան և կնիք յաղթող ընդդէմ թշնամւոյն․ եկայք։

Դ․ Ի տաճարի սրբութեան փառաց քոց Քրիստոս

Digitized by Google

զոր ի յերկնից լուսաւորեցեր աստուածային ծագմամբ. ի սմա ըզքեզ անդադար բարեբանեսցուք։ Որ ըզխորհուրդըս փըրկական աստուածգիտութեան. շնորհեցեր մեզ ի ձեռըն քահանայապետին քո և վըկային։ Նորին աղաչանօք խընայեա ի մեզ։ Զհաւատացեալ ժողովուրդըս սուրբ Երրորդութեանդ. եւ զապաւինեալս ի խորան փառաց քոց. պահեա անխըռով ի խաղաղութեան։

## ԱԿ

Ա. ՆՇԱՆԱՒ ամենայաղթ խաչիւըդ քո Քրիստոս. պահպանեա զմեզ մարդասէր յաներեւոյթ թըշնամւոյն զի դու միայն ես. Թագաւոր փառաց օրհնեալ յաւիտեանս։ Որ ի վերայ սորա տարածեցեր զանարատ բազուկըս քո. եւ հեղեր զարիւնդ ի փըրկութիւն տիեզերաց զի։ Ի միւսանգամ քո գալըստեանըն յերեւել սուրբ նըշանիս. արժանի արա ըզծառայս քո վերըստին նորոգման զի։

Բ. Խաչ քո եղիցի մեզ ապաւէն բացանիչ փայլմամբն իւրով. խորտակեաց ըզթըշնամին և ելոյծ ըզդատակնիքս. անուանեալ փայտըն կենաց ի փըրկութիւն տիեզերաց։ Վերանեալ ցընծան երկինք և երկիր ուրախանայ. ընդ յայտնել սըրբոյ խաչին սեռակնաձեւ քառաթեւին. որ զաշխարհըս լուսաւորեաց արեգակնակերպ ճառագայթիւք։ Ցընծացաւ Երուսաղէմ բերկրեցան հաւատացեալք. Նորահրաշ զարդարեցան քանզի տեսին զյաղթող նըշանն. արարածք ամենայն ի լոյսն պայծառացան։

Գ. Սեղան քո Տէր զօրութեանց. հաւատով կանգնեցաւ ի խորանի քում եկայք ժողովուրդք երկըրպա-

շնորհեցեր ողորմութիւն ի բնակարանըս հրեշտակաց եւ մարդկան քաւարան. տուր սըրմայ զանշարժ քո զխաղաղութիւն ։ Ի տաճարի փառաց սրբութեան քո քեզ երգեն մանկունք. տուր սոցա զառատ քո զողորմութիւն ։

## ԳՁ

Ա. ՓԱՅՏ կենաց որ փոխանակ մահացու պտղոյն. ըզՔրիստոս պտղաբերեցեր. Պարըսպեալ պահեա զուխտս հաւատացելոց ։ Քեւ բացաւ մեզ ճանապարհ ծառոյն կենաց. ի սրովբէափակ պահպանութենէն. պարըսպեալ ։ Քեւ ազատեցաւ նախահայրն ի ճաշակմանէ պտղոյն. եւ քեզ երկրպագեն ամենայն հաւատացեալք. պարըսպեալ ։

Բ. Անուանեալ փայտ գիտութեան ըզմեզ ի կենացըն հանեալ արտաքսեցոյց. որով յանցեաւ մայրն Եւա եւ պատրեաց ըզնախահայրն ։ Իսկ փայտ խաչի քո կենսատու. զաւազան զօրութեան կենաց մարդկան եւ յոյս հաստատութեան. առաջնորդ եղեւ մեզ ի կեանսըն յաւիտենից ։ Եւ տուր մեզ նըշան յաղթող սուրբ զխաչ քո. զի սովաւ մըտցուք ընդ նեղ դուռն անձկացեալ ճանապարհին. որում ցանկային երկրածին որդիք մարդկան ։

Գ. Հրաշափառ տեսութիւն ի կաթուղիկէ եկեղեցւոջ տեսանի. գործարան մահու մահուամբ առիթ գոլ կենաց. եւ մահացուցիչ նախաստեղծին մահուամբ գոլ շնորհող յարութեան ։ Պարգեւ գերագոյն պարգեւի այսօր հաւատացելոց. եւ մահացուցն ի կենաց առնու իւր զօրըս վերելեանս. եւ թռուցեալ վերագոյն ըզնա-

կեալ ի տեղւոջըն սրբութեան։ Եկայք ժողովուրդք ընդ հոգեղինացըն սպասաւորեսցուք. երկրպագեսցուք աստուածային սուրբ նշանիս. փառաւորեսցուք ընդհրաշագործ պարգեւաց տուողն։

ԳԿ

Ա. Ով քառաթեւ լուսածին գերապանծ նիշ կառուցող կենացն ամենից. միշտ բազկատարած առ քեզ էին։ Քառակուսի ազանց հովանի եւ պահապան ի յելս եւ ի մուտս. փրկութիւն ի յայսոց եւ պարիսպ ամրութեան։ Դրոշմ ըզգայութեան եւ կնիք ի դէմս ամենից. դու եւ յաստուածայինսըն կատարիս խորհրդոց. յորմէ արեգակնային փայլեն ճառագայթք։

Բ. Ով պահապան որ ծագեցար յԵդեմայ. նշան յաղթութեան ընդդէմ աներեւոյթ թշնամւոյն։ Դու փակելոյ դրախտին բացող եւ առաջնորդ աւազակին. որ զբոցեղէն սուրըն կապտեաց անեղին հրամանաւ։ Քեւ ցընծան ըստորայինքս ամենայն. ի միւսանգամ քո գալըստեանն. եւ յաւէժ ը զուարճանան դասք անմարմնոցն առէիցս։

Գ. Յաղթող եւ զնոր օրհնութիւն միշտ ի բարձունս երգեսցուք թագաւորին Քրիստոսի հաւատացեալ ժողովուրդք։ Որ եկն ի լուսաւորել զընտրեալ սուրբ զեկեղեցի. եւ պսակեաց սուրբ խաչիւ նշմամբ ըզփառս երգեսցուք։ Այսօր եւ մեք տօնեսցուք զնաւակատիս սուրբ խաչին. եւ փրկողին մատուցուք փառք եւ պատիւ յաւիտեան։

## ԴՋ

Ա. ԶՕՐՈՒԹԻՒՆ սուրբ խաչի քո Քրիստոս. որ կանգնեցեր ի փրկութիւն աշխարհի. ‖ սա պահեսցէ զմեզ յամենայն փորձութենէ. Քանզի ի սմա բարձրացար Աստուած. եւ ի սմա հեղեր զպատուական սուրբ զարիւնդ. սա: Եւ զմեզ միւսանգամ ըզգալուստդ. նշանաւ խաչի քո ցուցեր աշխարհի. սա:

Բ. Ի սուինգանելն Ադամայ ի կենագործ ի դրախտին. խաբմամբ պատրանօք փայտին ծառոյն գիտութեան. ծնաղամբ պատրանօքն ճաշակեալ ի պտղոյն. եւ եղեւ վայրաբնակիլ մայրաքաղաքն Երուսաղէմ: Արեւելք ի դրախտին ընծայեցին զփայտ խաչին եւ եկեալ կատարիւր ի տեղւոջ կառափելման. բարձրանայր ի դիտին տարրեղէն փայտակերտն. սուրբ քառաթեւեան պահապանն անձանց մերոց: Բանն անեղ համագոյ որ ընդ Հօր եւ սուրբ Հոգւոյն երեւեալ ի յերկրի պայծառացան արարածք. հեզօրէն կարողութեամբ եւ զմեզ վերագրեաց յորդեգրութեան շնորհս:

Գ. Գաւազան զօրութեան ըզխաչ քո ետուր մեզ Քրիստոս ‖ եւ սովաւ յաղթեսցուք անօրէն թշնամւոյն: Սա է զէն յաղթութեան որեալ արեամբ Որդւոյն Աստուծոյ. եւ սա: Սա է աթոռ տէրունեան. եւ ի սմա է բազմեալ Քրիստոս Որդին Աստուծոյ. եւ սա: Սա է սեղան սրբութեան եւ ի սմա է պատարագեալ Քրիստոս գառն Աստուծոյ. եւ սա: Սա է կարապետ յաւուր գալստեան Փրկչին. եւ պսակ պարծանաց հաւատացելոց. եւ սա:

Դ. Լուսաւորեա Երուսաղէմ. զարդարեա զամուրս

Digitized by Google

քո. քանզի մերձեցաւ առ քեզ փեսայն երկնաւոր փըրկութիւն քեզ շնորհելով պըսակեանց սքանչելի փառօքն իւրովք։ Այսօր ծագեաց քեզ դըշխոյ դուստր Սիովնի. արդարութեան արեգակըն Քրիստոս եւ սփռեցան ըզքեւ շընորհըք սուրբ Հոգւոյն մեծապէս պարգեւօք։ Այսօր ցընծայ սուրբ Սիովն մայր եկեղեցի. փայլեցո զմանկունըս քո որպէս զարեգակն. զի անճառ խընդութեամբ լըցոյց ըզքեզ Քրիստոս թագաւորն։

Դ·Կ

Ա. ԱՅՍՕՐ նըշան յաղթող երեւեալ ի յերկրի. պայծառացոյց ըզտիեզերս. զէն յաղթութեան ետուր ըզխաչ քո Տէր. ‖ Ապրեցուցանել ըզմեզ ի պատրանաց թըշնամւոյն։ Փայտ կենաց կանգնեալ ի մէջ տիեզերաց. յոյս եւ ապաւէն ազգի մարդկան. սա պահեսցէ ըզմեզ յամենայն վըտանգից մերոց. ապրեցուցանել։ Յաղթող զօրութեամբ խաչի քո պահեա ըզմեզ Քրիստոս Աստուած. որ տարածեցեր ըզձեռըս քո ի նմա. եւ լուծեր ըզկնիք դատապարտութեան յանցանաց մերոց. ապրեցուցանել։

Բ. Խաչի քո Քրիստոս երկըրպագեն արարածք ամենայն. որ է փըրկութիւն մեզ կանգնեցաւ. սա եղիցի մեզ պահապան յաղթող ‖ ապրեցուցանել ըզմեզ ի պատրանաց թըշնամւոյն։ Ի սմա բարձրացար բարձողդ անիծից. որ փառաւորեալդ ես ընդ Հօր. ժողովեր ըզհեռացեալսըն կենսաբեր փայտիւն. ապրեցուցանել։ Սովաւ լուսաւորեցան արարածք ամենայն. սա սպասէին արգելեալքն ի մեղսասէր բանտին որ ազատեաց ըզմեզ ի պատրանաց թըշնամւոյն։

Digitized by Google

Գ. Էջ Միածինն ի Հօրէ եւ լոյս փառաց ընդ նը-մա. ձայնք հընչեցին սանդարամետք անդընդոց։ Տեսեալ ըզլոյս մեծ հայրապետին Գրիգորի. պատմէր ցընծութեամբ հաւատացեալ արքային։ Եկայք շի-նեսցուք սուրբ ըզխորանըն լուսոյ. քանզի ի սմա ծա-գեաց մեզ լոյս ի Հայաստան աշխարհի։



# ԵՐԳ ՏԵԱՌՆ ՆԵՐՍԻՍԻ

## ՀԱՅՈՑ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ

## ԱՍԱՑԵԱԼ ՅԱՂԱԳՍ ՄԵԾԻ ՈՒՐԲԱԹՈՒ ԳԻՇԵՐԻՆ



## Ա.

Դկ. ԱՅՍՕՐ անճառ լուսոյն ծագումն ի փրկութեան մեր կատարումըն խորհրդի ի վերնատունն ի ստուերա-կան տօնից լըրումն. Նախ քան զընթրիսըն խորհըրդոյ սփածաւ զենջակ արկողն լուսոյ. եւ ջուր առեալ ծառայա-բար զոտըս լուանայր զաշակերտացն։ Բազմին Հօր փա-ռաց լուսոյ Պետրոս մերձիլ յոտս ոչ ներէր այնըմ ձեռաց որոյ են գործք երկնից երկինք եւ երկրաւորք. որով կուրաց աչըք բացան խուլք եւ համերք արձակեցան. որ վերածեաց զինքն ի ծովին սաստեաց ալեացն եւ լըռեցին։ Գըլխոյն ընտրեալ հօտին փոքու սաստէր զխորհուրդն ոչ գիտելոյ. որով դառնայր եւ հնազանդէր զոտս եւ ըզ-գլուխս մաքրել մաղթէր. գըլխոյս ասէ չէ ինչ պէտոյ լուացումըն ջրոյ զի լուացեալ է. զոտիցըդ պէտք են մաքրութեան յօդիլ ի գլուխըս սըրբութեամբ։ Դասուց իւրոց աշակերտաց զոր նախ բանիւ վարդապետեաց. այսօր գործով ըզծայրագոյնն եցոյց յինքեան զխոնարհու-

Digitized by Google

թիւն. տապանաւորեալ հողեղինաց այն որ անմահն է հրե-ղինաց. տարեալ պաշտօն իւր ծառայիցն այն որ պաշտին ի սրովբէից. Եթէ Տէրս ասէ էից և վարդապետս բոլորից. զաշակերտացդ ես զծառայից զոտս լուա-ցի ի հնոյ աղտից. միմեանց և դուք համբերութեամբ ցուցէք ըզնոյն խոնարհութիւն. բարձրացելոյն ի կոր-ծանումն և անկելոյ բնութեանդ կանգնումն: Զօր մա-քրեցեր յաւազանին մաքուր ձեռօք զոտս նոցին. և ուսուցեր խոնարհութեամբ յաղթող լինել չար հպար-տին. և զիմ լուա զաղտն մեղաց աղաչանօք սրբոյ դընդին. եւ ըզգընացս ուղղեա զոտին խոնարհութեամբ նմիւք յերկինս.

## Բ

Էլից զօրէնսըն Մովսէսի զոր խօսեցաւ ի Սինայի. եկեր ըզգառն օրինակին և ըզբաղարջն ընդ եղեգին. ըզհինն ի նորըս փոխելով ըզստուերն ի լոյս ճըշմարտե-լով. փոխան գառինն ինքըն գոլով գառն Աստուծոյ նուիրելով: Ընդ բաղարջին հաց անխըմոր ետ ըզմար-մինն իւր զերկնաւոր. ըզկուսածինն անսերմնաւոր զա-նապականն և զհոգեւոր. ընդ ոչխարին արեան ուխտին ետ մեզ զարիւն իւր ուխտ կըրկին. և եղեգան դառ-նագունին փոխան ըզվարս աստուածային: Թագաւորն արարածոց զհացըն կենաց ետ քաղցելոց. և ըզբաժակն ուրախարար որք յԱդամայ տըրտմեցելոց. այս նոր ուխտ է իմոյ արեան փոխան հընոյ ուխտին արեանց. զոր յիշատակ իմ առնիցէք մինչեւ եկից ես միւսան-գամ: Փառաւորեալդ ի քէն հայցեմք ընդ ժողովեալ մե-տասանին. որ զկենարարըդ քո մարմին բաշխեալ ետուր ընդ բաժակին. շնորհեա և մեզ Տէր ընդ նոսին հաղորդ

* Տես ի Զեկուցումն, էջ ԺԴ:

լինել քում սեղանին. կենաց հացիդ յոր փափագիմք
և ըմպելւոյդ ում ծարաւիմք։ Ի՞ յընտրելոց աշակեր-
տացն Յուդաս մեկնեալ ի սուրբ պատանեացն. զբարձող
մեղաց զանն Աստուծոյ մատնէր ի մահ ընդ արծաթոյ.
Ի յընթրեացն հեղգեւոր մերձի ժըպիրհն և նենգաւորն.
Զատելով ընդ վարդապետըն յամենայն զխաբէութիւն ։
Լոյսըն խօսէր աղերսալի խաւարելոյն վասըն դարձի.
Մի ոմն ի ձէնջ ասէ եղբարք զիս մատնելոց է առ ի
մահ. Պետրոս լըւեալ զայն զարհուրէր և ակնարկէր առ
Յովհաննէս. հարցանել թէ ով իցէ դաւաճանող վար-
դապետին ։

Գ

ԽՆԱՄՈՎ սիրոյն յիւր սիրելեացն ըզտըրտմութիւնըն
փարատեաց. Թացեալ պատառ տայ Յուդայի նըշաւակեալ
զգողըն մատնիչ. զոր առեալ և մերկացաւ յաստուա-
ծային Հոգւոյն շնորհաց. մատնեցաւ նախանձարին ընդ
մատնութեան վարդապետին։ Ծայրագոյն լուսոյն զըր-
կեալ խաւարասէրն արտաքս ելեալ. Տէրըն յայտնէր
լոյս եղելոցն ըզգայթակղելն ի գիշերի. Պետրոս խօսէր
խրախուսելի և կըշտամբիւր հաւախօսի. զիւրն յաշ-
խարհէ զփոխելն ասէր եւ ըզգալուստ Հոգւոյն պատմէր։
Կեդրոնեան յայնկոյս ձորոյն ի վերնատունն ել խար-
հըրդոյ. եմուտ պարտէզ ընդ պարտիզի եմոյծ զԱդամ
յադին դրախտին. մուծցես և զմեզ Տէր ընդ նըմին
ուստի հաներ նախ զառաջինն. զի ժառանգել ըզհայ-
րենին արժանասցուք մեք վերըստին։ Հոգայր ըզկըրի-
ցըն տըրտմաբար երիւքն եղեալ առանձնաբար. փըրկել
զաշխարհ հոգիս յօժար բայց է բնութիւն մարմնոյս տը-
կար. ոչ ոմն ուժեղ և զօրաւոր և ոմն անզօր վըտան-

Digitized by Google

գաւա՝ր . ա՛յլ մի և նոյն գո՝լ մի՛աւոր կը՝րէ՛ր ըզկիրսըն կա՛մաւո՛ր։ Ձա՜յնիւ մաղթէ՜ր աղօ՝թա՛կան վասն ի՝մ ա՛ռ Հայր իւր էակա՝ն. ծո՛ւնըր դընէր խո՜նա՛րհական ո՛րում կը՛րկնի ծունր ամենայն. ե՛թէ՛ փըրկե՛լ մարդկա՝ն հնա՛ր է առա՝նց մա՛հու իմ որ գրեալ է՝ բաժակ մահուս յի՛նէ՛ն անցցէ ո՝չ ի՛մ կամաւ այլ քո՛յդ տեսցէ՜։ Դօ՜ղեալ յեր-կի՜ւղ քըրտա՝նց հո՛սման ոլո՝ռնա՛ձեւ կայլակ վիժմա՛ն. ի՛ զօրանալ հրե՝շտա՛կ մերձեալ զօրի՝նա՛կան գիրըն ըն-ցեա՝լ. զի՛ կա՛տարեա՞լ էա՝ռ զբնո՛ւթիւն Աստուա՝ծը՛ն Բան ըզմարդկութեա՝ն. պա՜րտ էր զերկիւղ ե՝ւ զտը՛րտմութիւն յիւրո՛ւմըն կրել անօրէ՛նութի՜ւն ։

Դ

ՃԱ՜ՌԱԳԱ՜ՅԹ փառա՝ց է՛ին որ ըստ բնութեա՛նըս մարդկայի՝ն. տա՛գնապեցար ի գի՛շերին աղօթե՛ցեր առ Հայր յերկի՝ն. ծա՛գեա՛ ի մե՞զ զլոյսդ երկնայի՛ն և փա՝-րատեա՛ զերկիւղ չարի՝ն. մա՜սունք հոգւոց մե՝ր ե՛ւ մար-մի՛ն յերկի՛ւղ քո սուրբ բեւեռեսցի՛ն։ Մե՜րձեալ Յուդա՜ս որ մա՝տնե՛լոց հանդերձ դա՝սու՛ն փարիսեցւո՝ց. ա՛նկան նըման սատրա՛նկելոցն որք յա՝ւի՛տեան չեն կանգնելո՝ց. Յո՛ւդա՛ս նենգա՜ւ համբո՝ւրե՛լով առի՝թ մա՛հու նըշան տա-լո՝վ. փո՜խան սիրոյ զնա՝ մա՛տնելով չար ը՛նդ բարւոյ վըճա՛րելո՜վ։ Յա՜յնժամ առ գո՜ւթ սիրո՝յն Պե՛տրոս ըզ-ծա՝ռայի՛ն անուն Մաղքո՝ս. ե՛հատ սուսերբ զակա՛նջն աջոյ որ ո՝չ լը՛ւաւ Տեա՛ռըն ի՛ւրոյ. իսկ Տէ՛րըն մե՞ր արա՝գա՛պէս յո՛ւնկըն մերձեա՛լ բըժըշկապէս. ա՜ռողջացոյց աստուա՜-ծապէս զո՛ր ո՛չ տեսին կուրա՛ցն հանդէ՛ս։ Նո՞ր հօտի՜ն փոքու ցը՛րուեալ քանզի՝ զհո՛վիւըն քաջ հարեա՝լ. Պե՛տրոս միայն ը՝զհե՛տ երթեալ ի յա՝ղխկա՛նէ վե՛մին չարժեա՝լ.

նըշանակեալ հաւըն խօսէր առ ի Պետրոս Տէրն ակնարկէր. զբանըն յիշէր դառն արտասուէր ի գլորմանէն դարձեալ կանգնէր։ Շնորհեալ վիմին եկեղեցւոյ զօր պահեցեր ի հոսելոյ. եւ կանգնեցեր ի գլորելոյ վասըն սըրտին արտասուելոյ. կանգնեա և զիս Տէր ընդ նըմին ի գլորմանէ սայթաքողին. տալով աչացս յորդ արտասուս եւ ջուր նըման ծովու գըլխոյս։ Ո՞վ կամաւ զանկապելին կապեալ ըղձեաս արձակողին. ի յապարանսըն տանէին կայիափայ և Աննային. ծառայն զերեսն այն ապտակէր յորմէ սրովբէն թեւաքողէր. Թուք արձակեալ պիղծ բերանով յայն որ կուրին լոյս ծագեաց թքովն։

Ե

ԶԱ՞Ր կապանաց մարդկան լուծիչ որ կապեցար ընդ կապելոյն. զիս արձակեա յինքնակապէս մեղաց կապից դըժոխայնոյն. որ ընդ մեղօք պարտաւորին կացեր անմեղդ ի յատենին. յորժամ փառօք գաս հայրենի մի դատեսցես զիս ընդ նոսին։ Պա՞տկառանօք հինն Ադամայ որ ձաղեցար վասըն նորա. ջընջեա զամօթ մեղաց լըրբին որով զերեսս իմ ծածկեցին. որ ներեցեր չար ծառային ածել ձեռօք քեզ ապտակին. հար ուժգնակի զդէմըս չարին որպէս և զիս եհար ուժգին։ Ջա՞հըն լուսոյ յառաւօտին ի յուրբաթուն հընոյ զատկին. կայր առաջի դատաւորին ծառայն նըստէր ի յատենին. ի հարցանել Պիղատոսի Տէրն ոչ տանէր պատասխանի. զի կանխաւ ասաց գիրըն լըցցի եղէ եւ մարդ որ ոչ խօսի։ Ռա՞մկական դատք զինուորացն արկին հանդերձ նախատանաց. այնմ որոյ զգեստն է լոյս փառաց իբրեւ զօթոց զինքեամբ արկած. ի ծունր իջեալ կատակէին

զգլուխն եղեգամբ հարկանէին. պըսակ ի փշոց բոլո-րէին ըզփուշ մեղացըն բարձողին։ Աջոկալին քերով-բէից բառնայր ինքեամբ ըզփայտ խաչին. մինչ ի տեղի Գողգոթային յորում եդեալ մարդն առաջին. Ետուն ըմպել գինի զմըռսեալ և կերակուր լեղեաւ խառնեալ. որով զպըտղոյն դառըն ճաշակ փոխեաց մեզ քաղցր և անխորժակ։ Վերնականքըն զարհուրեալ տեսին ըզՏէրըն մերկացեալ. Եւ ըզհանդերձըն բաժանեալ պատմուճա-նին վիճակ արկեալ. ըզձեռսն և զոտսըն ծակեցին ըստ յայտնապէս Դաւթեան ձայնին. ընդ փայտ խաչին բե-ւեռեցին զմատունսն որ գրեաց ի տախտակին.

Զ

ՏԱՐԱԾԵԱԼ ձեռք ընդ ձեռաց ոտք ընդ ոտից ըն-թանալեաց. փայտ ընդ փայտի դառըն պըտղոյ կեանք ընդ մահու փոխարկելով. ի մէջ երկուց անօրինաց կայր մերկացեալ տուողն օրինաց. զոր ոչ տեսին աչքըն կու-րաց բայց ի միոյն յաւազակաց։ Բոպէից արեգականն ըզտիւն արար գիշերանման ըզլուսաւորըն քօղ արկ մեր-կութեան զի մի տեսցէ ակն անարժան. ի մէջօրեայն նըսեմացաւ յորժամ Ադամ մեղօք մեռաւ. ի յիններորդն ի լոյս դարձաւ յորժամ մահուամբ մահըն լուծաւ։ Ցօղէր արտօսըր ցաւագին մայր Տեառն որ կայր մերձ առ խաչին. յորժամ լսէր ըզծարաւին բարբառելով իւր միածնին. Ետուն քացախ խառնեալ լեղի այնմ որ բըղ-խեաց գետ յադենի. Եւ ի վիմէն վըտակ բարի արբոյց տոհմին դառնացողի։ Իջուծեալ յերրորդ ժամու օձին զմիտըս նախնոյ մօրն Եւային ի վեցն անկեալ մարդն առաջին հաւանական բանիւ նորին. ի սոյն ժամու Տէրն

*ի խաչին զի քաւեսցէ զմեղըս նոցին. եւ յորժամ եւ Ադամըն հին եդ զանապակն ի մէջ դրախտին: Փա-րելի բարբառ ընդ իմ էլի էլի առ Հայր կոչէր զհոգին կամաւ Հօր աւանդէր զհոգին մարդկան նոյն ընծայէր. Երկիր հիմամբք սասանեցաւ և վարագոյրն ընդ մէջ հերձաւ. վէմք ի յինքեանց պատառեցան եւ գերեզմանք մահու բացան: Քարոզի ի սքանչելեացս Աստուած մարմնով վասն իմ խաչեալ. մերով բնութեամբըս մեռա-նի Աստուած անմահ խոստովանի. կըրկնավըրտակ կո-զին անդրերբք եկեղեցի իւր հաստատի. Ջրովըն մաքրի զարիւնն ըմպէ զՈրդի ընդ Հօր փառաւորէ:*

···⋙⋘···

ՍԱՂՄՈՍ Դ. Ձայնէ:

**Կ8.** *Նշանեցաւ առ մեզ լոյս երեսաց քոց. և ետուր ուրախութիւն սրտից մերոց:*

**Փխ. Ի** *կարդալ իմում լուար ինձ Աստուած:* **325:**

~~~~~~~~~~~~

# ԱՒԵՏԱՐԱՆՔ ԽԱՉԵԼՈՒԹԵԱՆ

## ԴԿ. ԲԿ

## ԱՒԵՏԱՐԱՆ ԸՍՏ ՄԱՏԹԷՈՍԻ: ԻԷ. 1:

*Վասն չարչարանաց և խաչելութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի:*

**ԻԲՐԵՒ** *այգ եղև, խորհուրդ արարին ամենայն քահա-նայապետքն և ծերք ժողովրդեանն վասն Յիսուսի՝ սպա-նանել զնա: Կապեցին զնա, և տարին գնացին, և ետուն ի ձեռս պոնտացւոյ Պիղատոսի դատաւորի: Յայնժամ տեսեալ Յուդայի՝ որ մատնեացն զնա, թէ պարտաւորեցաւ,*
~~~~~~~~~~~~

զղջացաւ. և դարձոյց զարծաթն առ քահանայապետսն և ծերս ժողովրդեանն՝ և ասէ. մեղայ զի մատնեցի զարիւն արդար: Եւ նոքա ասեն. մեզ չէ փոյթ, դու գիտես: Եւ ընկէց զարծաթն ի տաճարին՝ և գնաց, և չոգաւ խեղդեցաւ: Իսկ քահանայապետիցն առեալ զարծաթն՝ ասեն. ոչ է արժան ընդունել զայդ ի կորբանն, քանզի գինք արեան են: Խորհուրդ արարեալ՝ գնեցին այնու զագարակն բրուտի ի գերեզման օտարաց: Վասն այնորիկ կոչեցաւ ագարակն այն, ագարակ արեան՝ մինչև ցայսօր: Յայնժամ լցաւ՝ որ ասացաւն ի ձեռն Երեմիայի մարգարէի. և առին զերեսուն արծաթին զգինս վաճառելոյն, զոր արկին յորդւոցն Իսրայելի, և ետուն զնա յագարակն բրուտի, որպէս հրամայեաց ինձ Տէր: Եւ Յիսուս եկաց առաջի դատաւորին. եհարց ցնա դատաւորն և ասէ. դո՞ւ ես թագաւորն Հրէից: Եւ Յիսուս ասէ. դու ասես: Եւ ի չարախօսելն նորա ի քահանայապետիցն և ի ծերոց, ոչ ինչ ետ պատասխանի: Յայնժամ ասէ ցնա Պիղատոս. ո՞չ լսես՝ որչափ դոքա հակառակ քո վկայեն: Եւ ոչ ետ նմա պատասխանի՝ և ոչ բան մի, մինչև զարմանալ դատաւորին յոյժ: Բայց ըստ տօնի սովոր էր դատաւորն արձակել ժողովրդեանն կապեալ մի՝ զոր կամէին: Ունէին յայնժամ կապեալ մի նշանաւոր, որում անուն էր Յեսու Բարաբբա: Իբրև ժողովեցան, ասէ ցնոսա Պիղատոս. զո՞ կամիք յերկուց աստի՝ զի արձակեցից ձեզ, զՅեսո՞ւ Բարաբբա՝ եթէ զՅիսուս զանուանեալն Քրիստոս: Քանզի գիտէր՝ թէ առ նախանձու մատնեցին զնա: Եւ մինչ նստէր յատենին, առաքեաց առ նա կինն իւր՝ և ասէ. չկայ ինչ քո և արդարոյն այնորիկ, զի բազում անցք անցին ընդ իս այսօր յանուրջս վասն նորա: Իսկ քահանայապետքն և ծերք հաւանեցուցին զժողովուրդն, զի խնդրեսցեն զԲարաբբայն՝ և զՅիսուս կորուսցեն: Պատասխանի ետ դատաւորն և ասէ ցնոսա. զո՞ կամիք զի արձակեցից ձեզ յերկուց աստի: Եւ նոքա ասեն. զԲարաբբա: Ասէ ցնոսա Պիղատոս. իսկ զի՞ արարից զՅիսուս զանուանեալն Քրիստոս: Ասեն ամենեքեան. խաչեսցի: Եւ նա ասէ. զի՞նչ չար արար: Եւ նոքա առաւել ևս աղաղակէին և ասէին. խաչեսցի: Եւ տեսեալ Պիղատոսի՝ թէ ոչ ինչ օգնէ, այլ առաւել խռովութիւն լինի, առեալ ջուր՝ լուաց զձեռս առաջի ժողովրդեանն՝

Digitized by Google

և ասէ. քաւեալ եմ ես յարենէ արդարոյդ այդորիկ, դուք գիտասջիք: Պատասխանի ետ ամենայն ժողովուրդն և ասէ. արիւն դորա ի վերայ մեր և ի վերայ որդւոց մերոց: Յայնժամ արձակեաց նոցա զԲարաբբայն, և զՅիսուս գան հարեալ ետ ի ձեռս՝ զի խաչեսցի: Յայնժամ զինուորք դատաւորին առին զՅիսուս յապարանս, և ժողովեցին ի վերայ նորա զամենայն զգունդն. մերկացին զնա, և արկին զնովաւ քղամիդ կարմիր. և բոլորեալ պսակ ի փշոց՝ եդին ի գլուխ նորա, և եղէգն յաջոյ ձեռին նորա. ի ծունր իջեալ առաջի նորա՝ կատակէին և ասէին. ողջ եր, թագաւոր Հրէից: Եւ թքեալ ի նա՝ առնուին զեղէգնն և ծեծէին զգլուխ նորա: Եւ յորժամ ձաղեցին զնա, մերկացուցին ի նմանէ զքղամիդն՝ և ագուցին նմա զիւր հանդերձն, և տարան զնա ի խաչ հանել: Եւ ելեալ արտաքս՝ գտին այր մի կիւրենացի՝ անուն Սիմոն, զնա կալան պահակ՝ զի բարձցէ զխաչն նորա: Եւ եկեալ ի տեղին անուանեալ Գողգոթա, որ է տեղի կառափելոյ, ետուն նմա ըմպել գինի ընդ լեղի խառնեալ. և իբրև ճաշակեաց, ոչ կամէր ըմպել: Եւ հանեալ զնա ի խաչ, բաժանեցին զհանդերձս նորա վիճակաւ. զի լցցի բանն՝ որ ասացաւ ի մարգարէէն. բաժանեցին զհանդերձս իմ յիւրեանս, և ի վերայ պատմուճանի իմոյ վիճակս արկանէին: Եւ նստեալ պահէին զնա: Եւ եդին ի վերայ գլխոյ նորա գրեալ զվնաս նորա, թէ այս է Յիսուս Թագաւորն Հրէից: Յայնժամ հանին ընդ նմա ի խաչ երկուս աւազակս, մի յաջմէ նորա և մի յահեկէ: Եւ որ անցանէինն՝ հայհոյէին զնա. շարժէին զգլուխս իւրեանց, և ասէին. վա՜հ, որ քակէիր զտաճարն և զերիս աւուրս շինէիր զնա. ապրեցո զքեզ, թէ Որդի ես Աստուծոյ՝ էջ ի խաչէդ: Նոյնպէս և քահանայապետքն ձաղէին հանդերձ դպրօքն և ծերովք և ասէին. զայլս ապրեցոյց, զինքն ոչ կարէ ապրեցուցանել. եթէ Թագաւոր է Իսրայէլի՝ իջցէ այժմ ի խաչէդ և հաւատասցուք դմա. եթէ յուսացաւ յԱստուած, փրկեսցէ այժմ զդա՝ եթէ կամի զդա. քանզի ասաց՝ եթէ Աստուծոյ Որդի եմ: Զնոյն և աւազակքն՝ որ խաչեալ էին ընդ նմա, նախատէին զնա: Եւ ի վեց ժամէ աւուրն խաւար եղև ի վերայ ամենայն երկրի մինչև ցինն ժամ: Եւ զինն ժամաւն գոչեաց Յիսուս ի ձայն մեծ և ասէ. էլի, էլի,

Digitized by Google

լամա սաբաքթանի. այս ինքն է, Աստուած իմ, Աստուած իմ, ընդէ՞ր թողեր զիս։ Ոմանք յայնցանէ որ անդն կային, իբրև լուան՝ ասէին. զԵղիա կարդայ դա։ Եւ վաղվաղակի ընթացաւ մի ոմն ի նոցանէ, ա՛ռ սպունգ լի քացախով, հարեալ յեղեգան՝ ետ ըմպել նմա։ Եւ կէսքն ասէին. թող տեսցուք եթէ գա՞յ Եղիա փրկել զդա։ Եւ Յիսուս դարձեալ աղաղակեաց ի ձայն մեծ, և արձակեաց զոգին։ Եւ ահա վարագոյր տաճարին ցելաւ յերկուս ի վերուստ մինչև ի վայր, և երկիր շարժեցաւ, և վէմք պատառեցան, և գերեզմանք բացան, և բազում մարմինք ննջեցելոց սրբոց յարեան, և ելեալ ի գերեզմանաց յետ յարութեանն նորա՝ մտին ի քաղաքն սուրբ, և երևեցան բազմաց։ Իսկ հարիւրապետն և որ ընդ նմա պահէին զՅիսուս՝ իբրև տեսին զշարժումն և զեղեալսն, երկեան յոյժ և ասեն. արդարև Աստուծոյ որդի էր սա։ Էին անդ կանայք բազումք, կային ի հեռաստանէ և հայէին, որք եկին զկնի Յիսուսի ի Գալիլեէ պաշտել զնա. յորս էր Մարիամ Մագդաղենացի, և Մարիամ Յակոբայ և Յովսեայ մայր, և մայր որդւոցն Զեբեդեայ։ 56։

## ԲՁ. ԴՁ

## ԱՒԵՏԱՐԱՆ ԸՍՏ ՄԱՐԿՈՍԻ։ ԺԵ. 1։

### Վասն չարչարանաց և խաչելութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։

Եւ վաղվաղակի ընդ առաւօտն խորհուրդ արարեալ քահանայապետիցն հանդերձ ծերովքն և դպրօք՝ և ամենայն ատեանն՝ կապեցին զՅիսուս և տարան մատնեցին Պիղատոսի։ Եհարց զնա Պիղատոս և ասէ. դո՞ւ ես թագաւորն Հրէից։ Նա պատասխանի ետ նմա և ասէ. դու ասես։ Եւ չարախօսէին զնմանէ յոյժ քահանայապետքն, և նա ոչ ինչ տայր պատասխանի։ Իսկ Պիղատոս դարձեալ հարցանէր զնա. ո՞չ ինչ տաս պատասխանի, տես քանի՛ ամբաստանեն զքէն։ Եւ Յիսուս այնուհետև ոչ ինչ ետ պատասխանի, մինչև զարմանալ յոյժ Պիղատոսի։ Բայց ըստ տօնի արձակէր նոցա զմի ոք զկապեալ, զոր ինքեանք խնդրէին։ Եւ էր՝ որում անուն էր Բարաբբա՝ կապեալ ընդ խռովիչսն, որոց ի խռովելն՝ այր մի

Digitized by Google

սպանեալ էր։ Ի ձայն բարձր սկսաւ աղաղակել ամբոխն՝ և խնդրել որպէս սովոր էր, զի արձակեսցէ նոցա զԲարաբբայն։ Պատասխանի ետ Պիղատոս և ասէ ցնոսա. կամիք զի արձակեցից ձեզ զարքայն Հրէից։ Քանզի գիտէր՝ թէ առ նախանձու մատնեցին զնա քահանայապետքն. որք և զամբոխն հաւանեցուցին՝ զի արձակեսցէ նոցա զԲարաբբայն։ Դարձեալ պատասխանի ետ Պիղատոս և ասէ ցնոսա. իսկ զի՞նչ կամիք թէ արարից զարքայն Հրէից։ Եւ նոքա դարձեալ աղաղակէին՝ յուզեալք ի քահանայապետիցն. ի խաչ հան զդա։ Ասէ ցնոսա Պիղատոս. զի՞նչ ինչ չար արարեալ իցէ դորա։ Եւ նոքա առաւել ևս աղաղակէին և ասէին. ի խաչ հան զդա։ Իսկ Պիղատոս իբրև զմիտս կամեցաւ հաճել զամբոխին, արձակեաց նոցա զԲարաբբայն, և զՅիսուս գան հարեալ՝ ետ ի ձեռս զի ի խաչ ելանիցէ։ Եւ զինուորքն տարան զնա ի ներքս ի գաւիթն՝ ուր հրապարակն էր. և կոչեն միանգամայն զամենայն զգունդն. և զգեցուցանեն նմա քղամիդ կարմիր և ծիրանիս, և եդին ի գլուխ նորա պսակ արարեալ ի փշոց. և սկսան ողջոյն տալ նմա՝ և ասել. ողջ եր արքայդ Հրէից։ Եւ ծեծէին զգլուխն եղեգամբ, և թքանէին ընդ երեսս, և ի ծունր իջեալ երկիր պագանէին նմա։ Եւ իբրև կատակեցին զնա, մերկացուցին զքղամիդն և զծիրանիս, և զգեցուցին նմա զիւր հանդերձ. և ածին արտաքս զի ի խաչ հանցեն զնա։ Եւ ունէին պահակ զՍիմովն կիւրենացի՝ որ ընդ այն անցանէր եկեալ յագարակէ, զհայրն Աղեքսանդրի և Ռուփայ, զի բարձցէ զխաչափայտն նորա։ Եւ ածեն զնա ի Գողգոթա տեղի մի, որ թարգմանի՝ տեղի կառափելոյ։ Եւ տային նմա գինի զմռսեալ, և նա ոչ առ. և հանին զնա ի խաչ։ Եւ բաժանեցին զհանդերձս նորա, արկեալ վիճակս ի վերայ՝ թէ ո՛ զինչ առնուցու։ Էր ժամ երրորդ, և հանին զնա ի խաչ։ Եւ էր գիր վնասու նորա գրեալ, թէ թագաւոր է Հրէից։ Եւ ընդ նմա հանին ի խաչ երկուս աւազակս, մի ընդ աջմէ և մի ընդ ահեկէ նորա։ Եւ լցաւ գիրն որ ասէ, թէ ընդ անօրէնս համարեցաւ։ Եւ որք անցանէինն հայհոյէին զնա՝ շարժեալ զգլուխս իւրեանց, և ասէին. վա՜հ, որ քակէիր զտաճարն՝ և զերիս աւուրս շինէիր. ապրեցո զանձն քո և էջ ի խաչէդ։ Նոյնպէս և քահանայապետիցն այպն արարեալ ընդ մի-

մեանս հանդերձ դպրօքն՝ ասէին. զայլս ապրեցոյց՝ զանձն
ոչ կարէ ապրեցուցանել. Քրիստոսդ արքայդ Իսրայելի,
իջցէ այժմ ի խաչէ այտի, զի տեսցուք և հաւատասցուք
դմա։ Եւ որ ընդ Նմա ի խաչն ելեալ էին՝ Նախատէին
զնա։ Եւ իբրև վեց ժամ եղև՝ խաւար կալաւ զամենայն
երկիր մինչև ցինն ժամ։ Եւ յիններորդ ժամուն աղա-
ղակեաց Յիսուս ի ձայն մեծ և ասէ. էլի, էլի, լամա
սաբաքթանի. որ թարգմանի, Աստուած իմ, Աստուած
իմ, ընդէ՞ր թողեր զիս։ Եւ ոմանք ի Նոցանէ որ շուրջն
կային զՆովաւ՝ իբրև լուան, ասէին՝ թէ զԵղիա կարդայ։
Եւ ընթացեալ մի ոմն՝ ելից սպունգ մի քացախով, և
հարեալ յեղեգան՝ տայր ըմպել Նմա, և ասէ. թոյլ տուր,
տեսցուք՝ գա՞յ Եղիա իջուցանել զդա։ Եւ Յիսուս արձա-
կեաց ձայն մեծ՝ և եհան զոգի։ Եւ վարագոյր տաճարին
պատառեցաւ յերկուս՝ ի վերուստ մինչև ի խոնարհ։ Եւ
տեսեալ հարիւրապետին որ կայր անդ՝ թէ աղաղակեաց
և եհան զոգի, ասէ. արդարև այրս այս Որդի Աստուծոյ
էր։ Էին և կանայք որ հայէին ի հեռաստանէ. յորս էր
Մարիամ Մագդաղենացի, և Մարիամ Յակովբու փոքր-
կան և Յովսեայ մայրն, և Սաղովմէ. որք յորժամ էրն
ի Գալիլեա՝ զհետ շրջէին Նորա, և պաշտէին զնա. և այլ
բազում կանայք՝ որ ընդ Նմա իսկ ելեալ էին յԵրու-
սաղէմ։ 41։

## ԱԿ. ԳԿ

## ԱՒԵՏԱՐԱՆ ԸՍՏ ՂՈՒԿԱՍՈՒ։ ԻԳ. 1։

Վասն չարչարանաց և խաչելութեան Տեառն մերոյ
Յիսուսի Քրիստոսի։

Եւ յարուցեալ ամենայն բազմութիւնն Նոցա, ածին զնա
առ Պիղատոս։ Եւ սկսան չարախօս լինել զՆմանէ և ա-
սել. գտաք զսա զի թիւրէր զազգս մեր, և արգելոյր ի
տալոյ հարկս կայսեր, և ասէր զանձնէ՝ թէ Քրիստոսն
իցէ թագաւոր։ Իսկ Պիղատոս եհարց զնա և ասէ. դո՞ւ
ես թագաւորն Հրէից։ Նա պատասխանի ետ Նմա և ասէ.
դու ասացեր։ Ասէ Պիղատոս ցքահանայապետսն և ցժո-
ղովուրդսն. չգտանեմ ինչ վնաս յառնս յայսմիկ։ Եւ Նո-

Digitized by Google

քա պնդէին և ասէին, թէ խռովէ զժողովուրդս, ուսու-
ցանէ ընդ ամենայն Հրէաստան՝ սկսեալ ի Գալիլէէ մին-
չև ցայսր։ Իսկ Պիղատոս իբրև լուաւ զԳալիլէէ, եհարց
եթէ գալիլեացի՞ իցէ այրն։ Եւ իբրև գիտաց թէ յիշ-
խանութենէ Հերովդի է, ետ տանել զնա առ Հերովդէս.
քանզի և նա յԵրուսաղէմ էր յաւուրսն յայնոսիկ։ Եւ
Հերովդէս իբրև ետես զՅիսուս, ուրախ եղև յոյժ. զի
ցանկայր ի բազում ժամանակաց տեսանել զնա. քանզի
լսէր բազում անգամ զնմանէ, և ակն ունէր նշան ինչ
լեալ տեսանել ի նմանէ։ Հարցանէր զնա բանիւք բազ-
մօք, և նա ոչ ինչ ետ նմա պատասխանի։ Կային քա-
հանայապետքն և դպիրք՝ և պնդագոյնս չարախօսէին
զնմանէ։ Արհամարհեաց զնա և Հերովդէս հանդերձ իւ-
րովք զօրականօքն, և այպն արարեալ՝ արկ զնովաւ
հանդերձս սպիտակս, և ետ տանել անդրէն առ Պիղատոս։
Եւ եղեն բարեկամք Պիղատոս և Հերովդէս յաւուր յայն-
միկ. քանզի յառաջ թշնամիք էին միմեանց։ Կոչեաց
Պիղատոս զքահանայապետսն և զիշխանս և զժողովուրդն,
և ասէ ցնոսա. ածէք մատուցէք ինձ զայրս զայս իբրև
զխոտորեցուցիչ ժողովրդեանն, և ահաւասիկ առաջի ձեր
դատեցայ, և վնաս ինչ ոչ գտի յառնս յայսմիկ՝ զորոց
դուք չարախօսէքդ զդմանէ։ Այլ և ոչ Հերովդէս, քանզի
ետու տանել զդա առ նա. և արդ ոչ ինչ մահու արժանի
է գործեալ դորա. խրատեցից զդա և արձակեցից։ Զի
հարկ էր մի մի ըստ տօնի արձակել նոցա։ Եւ նոքա
աղաղակէին ամենայն բազմութեամբն և ասէին. բարձ
զդա, և արձակեա մեզ զԲարաբբա, որ էր վասն խռո-
վութեան իրիք եղելոյ ի քաղաքին և սպանութեան մտեալ
ի բանտ։ Դարձեալ Պիղատոս սկսաւ խօսել, քանզի
կամէր արձակել զՅիսուս։ Եւ նոքա անդրէն աղաղակէին
և ասէին. ի խաչ հան զդա։ Եւ նա երիցս ասէ ցնոսա.
զի՞նչ չար արար սա. ոչ ինչ վնաս մահու գտի ի սմա.
խրատեցից զսա և արձակեցից։ Եւ նոքա ստիպէին մե-
ծաձայն՝ և խնդրէին զնա ի խաչ հանել. և զօրանային
բարբառքն նոցա և քահանայապետացն։ Եւ Պիղատոս հա-
ւանեցաւ առնել զհայցուածս նոցա։ Արձակեաց նոցա
զԲարաբբայն՝ զոր վասն խռովութեան և սպանութեան
արկեալ էր ի բանտ, զոր և խնդրէինն իսկ, և զՅիսուս
մատնեաց կամացն նոցա։ Իբրև առին գնացին զնա, ըմ-

Digitized by Google

բռնեցին զոմն Սիմոն կիւրենացի՝ որ գայր յանդէ, եդին ի վերայ նորա զխաչն՝ բերել զկնի Յիսուսի։ Եւ երթայր զհետ նորա բազմութիւն ժողովրդեանն, և կանանց՝ որ կոծէին և աշխարէին զնա։ Դարձաւ Յիսուս և ասէ ցնոսա. դստերք Երուսաղեմի, մի լայք ի վերայ իմ, այլ լացէք ի վերայ անձանց և ի վերայ որդւոց ձերոց. զի եկեսցեն աւուրք յորս ասիցեն, թէ երանի ամլոց և որովայնից՝ որ ոչ ծնան, և ստեանց՝ որ ոչ դիեցուցին։ Յայնժամ սկսանիցին ասել լերանց՝ թէ անկերուք ի վերայ մեր, և բլրոց՝ թէ ծածկեցէք զմեզ։ Զի եթէ ընդ փայտ դալար զայս առնեն, ընդ չորն զի՞նչ լինիցի։ Ածին և այլ երկուս չարագործս՝ սպանանել ընդ նմա։ Իբրև չոգան ի տեղին կոչեցեալ Գագաթն, անդ հանին զնա ի խաչ. և զչարագործսն՝ զոմն ընդ աջմէ և զոմն ընդ ձախմէ խաչեցին։ Եւ Յիսուս ասէ. Հայր, թող դոցա՝ զի ոչ գիտեն զինչ գործեն։ Եւ ի բաժանել զհանդերձս նորա, արկին վիճակս. և կայր ժողովուրդն հայեցեալ։ Անգոսնէին զնա իշխանքն հանդերձ նոքօք՝ և ասէին. զայլս ապրեցոյց, ապրեցուսցէ և զանձն՝ եթէ դա է Քրիստոս Որդի Աստուծոյ ընտրեալն։ Այպն առնէին զնա և զինուորքն, եկեալ առաջի՝ մատուցանէին նմա քացախ, և ասէին. եթէ դու ես թագաւորն Հրէից՝ փրկեա զանձն քո։ Եւ էր գիր գրեալ ի վերայ նորա, յունարէն և դաղմատերէն և եբրայեցերէն գրով, թէ սա է արքայն Հրէից։ Իսկ մի ոմն ի կախելոց չարագործացն հայհոյէր զնա՝ և ասէր. ո՞չ դու ես Քրիստոսն, փրկեա զանձն քո և զմեզ։ Պատասխանի ետ ընկերն սաստելով նմա՝ և ասէ. չերկնչի՞ս դու յԱստուծոյ՝ զի ի նմին պատժի կաս. և մեք յիրաւի, զի արժանի որոց գործեցաքն՝ առնումք զհատուցումն, և սա ապիրատ ինչ ոչ գործեաց. և ասէ ցՅիսուս. յիշեա զիս Տէր, յորժամ գայցես արքայութեամբ քով։ Եւ ասէ ցնա Յիսուս. ամէն ասեմ քեզ, այսօր ընդ իս իցես ի դրախտին։ Եւ էր իբրև վեցերորդ ժամ. և խաւար եղև ի վերայ ամենայն երկրի մինչև ցիններորդ ժամն. խաւարեցաւ արեգակն։ Եւ հերձաւ վարագոյր տաճարին ընդ մէջ։ Եւ կարդաց Յիսուս ի ձայն մեծ՝ և ասէ. Հայր, ի ձեռս քո աւանդեմ զհոգի իմ։ Զայս իբրև ասաց՝ եհան զոգի։ Եւ տեսեալ հարիւրապետին զոր ինչ եղեւն, փառաւոր արար զԱստուած և ասէ. արդարև



Digitized by Google

այրս այս արդար էր։ Եւ ամենայն ժողովուրդքն որ եկեալ էին, և տեսանէին զտեսիլն զայն և զգործ, բախէին զկուրծս՝ և դառնային։ Կային և ամենայն ծանօթքն նորա ի հեռաստանէ, և կանայք որ եկեալ էին զհետ նորա ի Գալիլեէ՝ տեսանէին զայն։ 49։

## ԱՁ · ԳՁ

## ԱՒԵՏԱՐԱՆ ԸՍՏ ՅՈՎՀԱՆՆՈՒ· ԺԸ· 28։

*Վասն չարչարանաց և խաչելութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։*

Եւ ածեն զՅիսուս ի վանացն Կայիափայ յապարանս դատաւորին. և էր այգուց։ Եւ նոքա ոչ մտին յապարանսն, զի մի՛ պղծիցին, այլ զի ուտիցեն զզատիկն։ Ել առ նոսա Պիղատոս արտաքս և ասէ. զի՞նչ չարախօսութիւն մատուցանէք զառնէն զայնմանէ։ Պատասխանի ետուն և ասեն ցնա. եթէ չէր չարագործ այրն այն, ապա ոչ մատնէաք զնա քեզ։ Ասէ ցնոսա Պիղատոս. առէք զնա դուք, և ըստ ձերոց օրինացն դատեցարուք։ Ասեն ցնա Հրեայքն. մեզ ոչ է արժան սպանանել զոք։ Զի լցցի բանն Յիսուսի զոր ասաց, նշանակեալ՝ թէ որով մահու մեռանելոց իցէ։ Եմուտ միւսանգամ յապարանսն Պիղատոս, կոչեաց զՅիսուս, և ասէ ցնա. դո՞ւ ես թագաւորն Հրէից։ Պատասխանի ետ Յիսուս. ի քէ՞ն ասես զայդ՝ եթէ այլք ասացին քեզ զինէն։ Պատասխանի ետ Պիղատոս. միթէ և ես Հրեա՞յ իցեմ. ազգն քո և քահանայապետք մատնեցին զքեզ ինձ. զի՞նչ գործ գործեալ է քո։ Պատասխանի ետ Յիսուս. իմ արքայութիւն չէ յայսմ աշխարհէ. եթէ յաշխարհէ աստի էր արքայութիւնն իմ, սպասաւորքն իմ մարտնչէին արդեօք՝ զի մի՛ մատնեցայց Հրէից. բայց արդ՝ թագաւորութիւնն իմ չէ աստի։ Ասէ ցնա Պիղատոս. ապա թէ այդպէս իցէ, թագաւոր ո՟ն ես դու։ Պատասխանի ետ Յիսուս. դու ասես՝ թէ թագաւոր իցեմ. բայց ես յայդ իսկ ծնեալ եմ, և ի դոյն իսկ եկեալ եմ յաշխարհ, զի վկայեցից ճշմարտութեանն. ամենայն որ ի ճշմարտութենէ է՝ լսէ բարբառոյ իմոյ։ Ասէ ցնա Պիղատոս. զի՞նչ է ճշմարտութիւն։ Զայս իբրև

Digitized by Google

տաւաց, դարձեալ ել առ Հրեայսն՝ և ասէ ցնոսա. ես և ոչ մի ինչ պատճառս գտանեմ ի նմա։ Բայց է ձեր սովորութիւն՝ զի զմի ոք արձակեցից ձեզ ի զատկիս. արդ կամիք զի արձակեցից ձեզ զԹագաւորն Հրէից։ Աղաղակեցին ամենեքեան և ասէին. մի՛ զդա, այլ զԲարաբբա. և էր Բարաբբայն այն աւազակ։ Յայնժամ ա՛ռ Պիղատոս զՅիսուս և գան եհար։ Եւ զինուորացն արարեալ պսակ ի փշոց՝ եդին ի գլուխ նորա, և զգեցուցին նմա հանդերձ ծիրանի. և գային առ նա և ասէին. ողջ եր, արքայ Հրէից։ Եւ հանէին նմա ապտակս։ Ել դարձեալ Պիղատոս արտաքս և ասէ ցնոսա. ահա ածեմ զնա արտաքս առ ձեզ, զի գիտասջիք թէ ես մեղաս ինչ ի նմա ոչ գտանեմ։ Ել Յիսուս արտաքս, և ունէր պսակ ի փշոց և հանդերձ ծիրանի։ Եւ ասէ ցնոսա. ահա այրդ ցձեզ։ Իբրև տեսին զնա քահանայապետքն և սպասաւորք, զաղաղակ բարձին և ասեն. ի խաչ հան՝ ի խաչ հան զդա։ Ասէ ցնոսա Պիղատոս. առէք զդա ի ձեզ, և ձեզէն հանէք ի խաչ. զի ես ի դմա մեղաս ինչ ոչ գտանեմ։ Պատասխանի ետուն նմա Հրեայքն. մեք օրէնս ունիմք, և ըստ օրինաց մերոց պարտի մեռանել, զի զանձն իւր Որդի Աստուծոյ արար։ Իբրև լուաւ զբանս զայս Պիղատոս, առաւել ևս երկեաւ. եմուտ դարձեալ անդրէն յապարանսն, և ասէ ցՅիսուս. ուստի՞ ես դու։ Եւ Յիսուս ոչ ետ նմա պատասխանի։ Ասէ ցնա Պիղատոս. ընդ իս ո՞չ խօսիս. ո՞չ գիտես եթէ իշխանութիւն ունիմ հանել զքեզ ի խաչ, և իշխանութիւն ունիմ արձակել զքեզ։ Պատասխանի ետ Յիսուս. ոչ ունէիր դու իշխանութիւն ի վերայ իմ և ոչ մի, եթէ ոչ էր տուեալ քեզ ի վերուստ. վասն այնորիկ որ մատնեաց զիս քեզ՝ նորա մեծ մեղք են։ Եւ յայնմանէ Պիղատոս խնդրէր արձակել զնա. և Հրեայքն աղաղակէին և ասէին. եթէ զդա արձակես, չես բարեկամ կայսեր. ամենայն ոք որ թագաւոր կոչէ զանձն իւր, հակառակ է կայսեր։ Իսկ Պիղատոս իբրև լուաւ զբանս զայսոսիկ, ած զՅիսուս արտաքս՝ և նստաւ ի վերայ բեմին ի տեղւոջն որ կոչէր քարայատակ, և եբրայեցերէն Կապպաթա։ Էր ուրբաթն զատկի, և էր ժամ իբրև վեցերորդ, և ասէ ցՀրեայսն. ահա թագաւորդ ձեր ցձեզ։ Եւ նոքա աղաղակէին. բարձ ի մէնջ, բարձ ի մէնջ, և հան զդա ի խաչ։ Ասէ ցնոսա Պիղա-

տոս. ես զթագաւորդ ձեր ի խա՞չ հանիցեմ։ Պատասխանի ետուն քահանայապետքն, չիք մեր թագաւոր՝ բաց ի կայսերէ։ Յայնժամ ետ զնա ի ձեռս նոցա, զի ի խաչ ելանիցէ։ Եւ նոքա առեալ տանէին զնա. և բարձեալ էր ինքնին զխաչափայտն, և ելանէր ի տեղին՝ որ անուանէր գագաթան, և կոչէր եբրայեցերէն Գողգոթա. ուր և ի խաչն իսկ հանին զնա, և ընդ նմա երկուս ևս այլս աստի և անտի, և ի միջի զՅիսուս։ Գրեաց և տախտակ մի Պիղատոս, և եդ ի վերայ խաչին. և էր գրեալ. Յիսուս Նազովրեցի Թագաւոր Հրէից։ Զայս տախտակ ընթերցան բազումք ի Հրէից, զի մօտ էր ի քաղաքէ անդր տեղին՝ ուր խաչեցաւն Յիսուս. և էր գրեալ եբրայեցերէն՝ դաղմատերէն և յունարէն։ Ասեն ցՊիղատոս քահանայապետքն Հրէից. մի՛ գրեր Թագաւոր Հրէից, այլ թէ նա ասաց՝ Թագաւոր եմ Հրէից։ Պատասխանի ետ Պիղատոս. զոր ինչ գրեցին՝ գրեցի։ Իսկ զինուորքն իբրև հանին ի խաչ զՅիսուս, առին զհանդերձս նորա և արարին չորս մասունս, իւրաքանչիւր զինուորի մասն. իսկ զպատմուճանն՝ քանզի էր առանց կարանի ի վերուստ փոր անկեալ ամենևին, ասեն ցմիմեանս. մի՛ պատառեսցուք զայդ, այլ արկցուք վիճակս ի վերայ դորա ում և եղցէ։ Զի լցցի գիրն որ ասէ. բաժանեցան զհանդերձս իմ յիւրեանս, և ի վերայ պատմուճանի իմոյ վիճակ արկին։ Զինուորքն զայս ինչ գործեցին։ Եւ կային առ խաչին Յիսուսի մայրն նորա, և քոյր մօր նորա Մարիամ Կղէովպա, և Մարիամ Մագդաղենացի։ Յիսուս իբրև ետես զմայրն և զաշակերտն զոր սիրէր՝ զի կայր մօտ, ասէ ցմայրն. կին դու, ահա որդի քո։ Ապա ասէ ցաշակերտն. ահա մայր քո։ Եւ յայնմ ժամանակէ ա՛ռ աշակերտն զնա առ իւր։ Յետ այսորիկ իբրև գիտաց Յիսուս, եթէ ահա ամենայն ինչ կատարեալ է, զի կատարեսցի գիրն՝ ասէ. ծարաւի եմ։ Եւ անդ կայր աման ինչ լի քացախով. և նոցա սպունգ լցեալ քացախով ընդ լեղւոյ՝ շուրջ եդեալ զմշտկաւ զոպայի, մատուցին ի բերան նորա։ Իբրև ա՛ռ Յիսուս զքացախն հանդերձ լեղւովն՝ ասէ. ամենայն ինչ կատարեալ է։ Եւ խոնարհեցուցեալ զգլուխ՝ աւանդեաց զոգին։ Իսկ Հրեայքն՝ քանզի ուրբաթ էր, զի մի անդէն ի խաչին ագանիցին մարմինքն մինչև ցշաբաթն, զի էր օր մեծ շաբաթուն այնո-

Digitized by Google

րէկ, աղաչեցին զՊիղատոս զի խորտակեսցեն զբարձս նոցա, և բարձցին։ Եկին զինուորքն, և զառաջինոյն խորտակեցին զբարձս, նոյնպէս և զմիւսոյն որ ընդ նմա ի խաչն ելեալ էր։ Բայց իբրև եկին առ Յիսուս, և տեսին զի այն ինչ մեռեալ էր, ոչ խորտակեցին զբարձս նորա. այլ մի ոմն ի զինուորացն տիգաւ խոցեաց զկողս նորա, և վաղվաղակի ել արիւն և ջուր։ Եւ որ ետեսն՝ վկայեաց, և ճշմարիտ է վկայութիւն նորա. և նա գիտէ՝ թէ ճշմարիտ ասէ, զի և դուք հաւատասջիք։ Այս եղև, զի լցցի գիրն, եթէ ոսկր նորա մի՛ փշրեսցի։ Եւ դարձեալ միւս գիր ասէ, եթէ հայեսցին ի նա՝ յոր խոցեցինն։ ժթ. 37։



## ԵՐԳ ՏԵԱՌՆ ՆԵՐՍԻՍԻ

ՑԱՂԱԳՍ ՄԵԾԻ ՈՒՐԲԱԹՈՒՆ ՑԵՐԵԿԻ ԱՒԵՏԱՐԱՆԱՑՆ

ՇԱՐԱԿԱՆ ԴԿ.





# ԽՐԱՏՔ

*Ա. վասն տօնից տէրունականաց և Աստուածածնին:*

Ի ԳԻՇԵՐԻՆ, Օրհնութիւն, ըստ պատշաճին տօնին գիշերա-կանին: Ապա Մաղթանք փառք հրաշափառ ըստ աւուր պատ-շաճին: Քարոզ, Աղօթք ըստ յայնմին: Աւետարան, ըստ աւուր պատշաճին և ըստ յայնմին: Մաղթանք ըստ յայնմին:

ՅԱՌԱՒՕՏՈՒՆ, Առաւօտու երգ ըստ պատշաճին տօնի: Քարոզ Մայր սուրբ: Քարոզ Խնդրեսցուք: Աղօթք Քում ամենազօր ըստ պատշաճին:

ՅԵՐԵԿՈՅԻՆ. Մեսեդի ըստ աւուրն պատկերի: Քարոզ Մայր սուրբ: Իսկ չինի Համբարձեալն Քարոզ Սուրբ զԱստուածածինն: Կեցո. Աղօթք Ընկալ Տէր:

*Բ. վասն կիւրակամտից:*

ՅԵՐԵԿՈՅԻՆ, չինի Աղբերցոյին Լոյս զուարթ: Մեսեդի Սի-րեցի զի լուիցէ. Զի խոնարհեցոյց: Իսկ յերեքշաբաթն շա-բաթու յորժամ մարտիրոսաց տօն լինի, Համբարձի ԱՁ տան Սուրբ ես Տէր. 110. և Հերեքնոյ Շարական զԵրկնաքաղաքացին. 111. և եթէ առաքելոց տօն լինի, Հերեքնոյ Շարական զի քէն հայցեմք. 111. և թէ վարդապետաց՝ զՋինաւորն Քրիստոսի. 105: Իսկ եթէ Մանկանց կայցէ աւուրն, Համբարձի զՄանկանց տան: Չինի Հայր գթածին փոխ Աստ օրհնեցէք ամենայն ծառայք: Ապա Քարոզ Խնդրեսցուք: Կեցո, յայնմ: Աղօթք Թագաւոր խաղաղութեան: Հայր մեր:

*Գ. վասն կիւրակէից:*

Յամենայն կիւրակէս որ միանգամ աւուրն էնչ նշանակեալ ոչ գտանես,

Ի ԳԻՇԵՐԻՆ, Օրհնութիւն յԱռաջ Օրհնութեանցն տան. 3. յոր յայն են լինիս: Եւ Մաղթանք փառք հրաշափառ: Քա-րոզ, Աղօթք և Աւետարան Յարութեան է յայնմն:

Digitized by Google

տաա: Քարոզ Վասն խաղաղութեան: Աղօթք Հայր գթած: Փոխ Որ բնակեալ է: Մաղթանք Զբարձրեալն զՔրիստոս: Քարոզ Եւ մեք միաբան: Աղօթք Յոյս կենաց: Հայր մեր: Եւ ապա խաղաղական տաա անխափան:

## Ն· Վասն աւուրց պահոց:

Յամենայն աւուրս պահոց, այս ինքն ի չորեքշաբթի, յուրբաթի և ի շաբաթամուտս կամ յայլ պահս,

Ի ԳԻՇԵՐԻՆ, Օրհնութիւն է պահոց Օրհնութեանցն տաա. 112. է յայնէն յոր լինի: Մաղթանք և Քարոզ՝ Ապաշխարութեան ըստ աւուրն:

ՅԱՌԱՒՕՏՈՒՆ, ի չորեքշաբթի և ի շաբաթամուտս Հարց պահոց ընշանակեալն է օրհնելն տաա: Իսկ յամենայն ուրբաթի Հարց հանգստեան տաա այսպէս,

| | | | | |
|---|---|---|---|---|
| Իբրև լինի ձայնն | ԱՁ | ձայն | տաա | ԴՁ |
| » | ԱԿ | » | » | ԳԿ |
| » | ԲՁ | » | » | ԳՁ |
| » | ԲԿ | » | » | ԲԿ |
| » | ԳՁ | » | » | ԲՁ |
| » | ԳԿ | » | » | ԱԿ |
| » | ԴՁ | » | » | ԱՁ |
| » | ԴԿ | » | » | ԴԿ |

Աստուծոյ երգ պահոց տաա ըստ աւուրն յամենայն պահս, և Քարոզ Փառաւորեսցուք: Մանկանց շարական է չորեքշաբթի և ի շաբաթամուտս պահոց. 126. ըստ յայնէն: Իսկ յուրբաթի Մանկանց խաչի. 156. է յայնէն: Ցեր Սուրբ ես Տէրին յամենայն պահս Փոխ Բանից իմոց տաա: Երգ Արարչական: Մաղթանք Խաչ քո եղիցի: Քարոզ Աղաչեսցուք: Աղօթք Օգնեա մեզ: Յիշեա Տէր զպաշտօնեայս. Բարերար և բազումողորմ:

ՅԵՐԵԿՈՅԻՆ, Մեծացուսցէ Աղաչ. է յայնէն. և Համբարձի պահոց 126. յոր յայնն և էջէ: Ապա Քարոզ Վասն խաղաղութեան. և այլն ըստ կարգի աւուրց տօնից որբոցն:



# ԿԻՐԱԿԷ. ԴԿ

## ԲՈՒՆ ԲԱՐԵԿԵՆԴԱՆԻ



### Ի ԳԻՇԵՐԻ

Փոխեա շնոյնն է Փրկչ։ Առաջին կանոն զխոստովանն ասա։ կանոնաւորեալ. ԴԿ. Սաղմոս ՃԽԵ։ Օրհնեա անձն իմ զՏէր։ Այլ հանգստեան շարական ոչ ասի մինչև ի Ղազարու յարութեան շաբաթն օրն։

### ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԴԿ

ԲԱՆՆ որ ընդ Հօր յէութեան. և համագոյ սուրբ Հոգւոյն. ըզպատկերն նուրական խառնեալ ընդ հողանիւթ բընութեանս. զոր զարդարեալ փառօք եդ ի դրախտին փափկութեան։ Ցորում ցընծայր զուարճացեալ. անտըխրական խընդութեամբ. քանզի զԱստուած տեսանէր միշտ խոնարհեալ ի դրախտին. յորմէ զլուսոյն ճառագայթ տըպաւորէր ի յինքեան։ Վասն որոյ աղաչեմ. մայր Աստուծոյ Մարիամ. զմիածին քո զՈրդին զի շնորհեսցէ սա անապականին. ժառանգել վերըստին մեզ ըզդրախտին վայելչութիւն։

† Այսօր յօրինակ. նախաստեղծին Ադամայ. որ ի դրախտին փափկութեան ուրախանայր ընդ հրեշտակս. ցընծացուք և մեք ի յօրհնութիւնս հոգևորս։ Այսօր ի խորհուրդ. աստուածաստեղծ նախահօրն. որ ի պըտղոյն ոգինայ ճաշակելով զուարճանայր. ճաշակեսցուք և մեք ըզպատուիրանս Աստուծոյ։ Այսօր ի տիպ. պատմուճանին առաջնոյ. որով պըճնեալ զարդարէր ի փառս մարդն առաջին. զարդարեսցուք և մեք աստուածային օրինօք։

Digitized by Google

Որ ողորմութեամբ զգեցար մարմին. եւ նորոգեցեր ըղձնացեալս. նորոգեա և զմեզ հոգւով Քրիստոս եւ ողորմեա։ Որ ի խաչին մեռար մարմնով. եւ զմեռեալքս դարձուցեր ի կեանս. կեցո և զմեզ։ Որ յարեարդ ի մեռելոց. եւ յարուցեր ըզբնութիւնս մեր յուսով. յարո և զմեզ։ Որ ըզսիրելին քո զՂազարոս. կոչեցեր ի գերեզմանէն. կոչեա և զմեզ հոգւով ի կեանս. եւ ողորմեա։

Նորահրաշ տեսլեամբ յարութեան քո Տէր անհեղակերպ փայլմամբ. զարհուրեցան դըժոխք. եւ մեռեալք ընդ կենդանւոյդ յարեան ի հաւատ համօրէն յարութեան։ Յորժամ փառօք հայրենի Քրիստոս ծագիս ի յերկնից. եւ յարուցանես ըզմեռեալսն. յայնժամ դասեա ընդ աջմէ քումմէ. եւ կոչեա զմեզ ի փառս քո։ Յորժամ հեծանոցաւ դատողութեան քո Տէր. սըրբես ըզկալ աշխարհս. յըշտեմարանս արքայութեան ժողովեա զմեզ ընդ արդարոցն։ Յորժամ եկեղեցի հարսնացեալ միանայ ընդ փեսայիդ. ընդ իմաստուն սուրբ կուսանացն. արժանացո առագաստին ըզմեզ ընդ նոսին երգել ըզփառս ի բարձունս։

Յիշեա զմեզ Տէր յորժամ գաս. թագաւորութեամբ քո։ Շնորհեա մեզ Տէր զթողութիւն. բազում յանցանաց մերոց։ Ուսո մեզ Տէր փառս տալ մեծի տէրութեանդ քո։

Օրհնեմք ըզքեզ անըսկիզբըն Հայր. որ յամենայն ժամ օրհնիս ի դասուց քերովբէից։ Գովեմք ըզքեզ միածին Որդի. որ անդադար փառաբանիս ի դասուց

սերովբէից։ Անդադար բերանով անհանգիստ բարբառով. բարեբանեմք սուրբ զՀոգիդ որ փառակիցդ ես Հօր եւ Որդւոյ։

Մի աստուածութիւն Երրորդութիւն անբաժանելի որ ի հրեշտակաց անդադար օրհնաբանիս։ Անմարմնոց զինուորութիւնք փառաբանեն զքեզ իշխան Հայր Աստուած։ Զօրեքկերպեան կենդանիքն վայելչաղաղակեն առ քեզ իշխանակից Որդի եւ Բանդ Աստուած։ Իշխանութիւնք աթոռոց գովեն զքեզ ամենասուրբ Հոգի եւ բոլորից Աստուած։

Օրհնեմք զքեզ անեղ անսկիզբն Հայր. անհասանելի եւ փառաւորեալ. յանմարմնոց զինուորութեանց։ Գովեմք զքեզ Որդի Հօր արարչակից Բանդ. նորոգող եւ կեանք ազգի մարդկան. Թագաւոր յաւիտենից։ Զքեզ բարեբանեն ամենայն ազինք. մշտընջենաւորուղխ անըսպառ աղբիւր. սուրբ Հոգիդ ճշմարտութեան։

Մտ. Աստուածածին եւ սրբուհի. որ զԲանն Աստուած անսերմն յղութեամբ յարգանդի կրեցեր. Անգողասմբ երգով մեծացուցանեմք։ Զքեզ մայր կուսութեան եւ յղութեան լուսոյ. եւ առագաստ անճառելւոյ ըզնակողին ի քեզ փեսայացեալ Բանին. անդամ։ Քեւ լուծան կնիք դատապարտութեանն. եւ քեւ կանգնեցաւ մեղուցեալ մայրըն գլորեալ. վասն որոյ զքեզ Աստուածածին եւ կոյս. անդամ։

ԽՉ. Խաչի քո Քրիստոս երկրպագեն տարածք ամենայն. որ ի փրկութիւն մեզ կանգնեցաւ. սա և եղիցի մեզ պահապան յաղթող ապրեցուցանել զմեզ ի պատրանաց թշնամւոյն։ Ի սմա բարձրացար բարձրոյդ անիծից. որ փառաւորեալդ ես ընդ Հօր. ժողո-

Digitized by Google

վերևլ ըղձեռացեալըն կենսաբեր փայտիւն. Սատրեցու-ցանել ըզմեզ ի պատրանաց Թշնամւոյն: — Փառք Հօր: Սովաւ լուսաւորեցան արարածք ամենայն. սմա երկրպա-գէին հրեշտակքն ի Միածին բանին որ ազատեաց ըզմեզ ի պատրանաց Թշնամւոյն:

— Այժմ և միշտ: Ցընծա Մարիամ. արեգականն ար-դարութեան արեւելք. եւ աղաչեա զսա ի քէն ծընեալն Աստուած փառըն մեր. զի դարձուսցէ վերըստին զմեզ ի դրախտին ժառանգութիւն:

## ՅԱՐԱՒՕՏՈՒ

### ՀԱՐՑ ԱՁ

ՈՒՐԱԽԱՑԻՐ եկեղեցի Քրիստոսի. փրկական տնօրէնութեամբ. մարմնացելոյն ի Կուսէն վասըն քո Աստուծոյ հարցըն մերոց: Այսօր ցընծան որդիք Ադամայ. քանզի որ ի սկըզբանն օրինադիր պահոցն ի դրախ-տին. վասըն մեր պահել մարմնով յանձն առնու Աս-տըւած: Այսօր երկրորդ Ադամ վասն առաջնոյն. ան-ճաշակ լինելով ըզճաշակմանց պըտղոյն քաւել ըզպար-տիս Աստըւած:

Գ. Ըզտէր օրհնեցէք. Բարձր արարէք ըզնա յաւիտե-եանս: Որ ըստ պահոց քառասնօրեայ փըրկողին. պա-հելով հարսնացեալ եկեղեցի. զի մըտցէ ի յառագաստ ընդ փեսային յարուցելոյն բարձր: Եկայք հաւատա-ցեալըք Քրիստոսի. ցընծութեամբ պահեսցուք ընդ անմահին մահու մեռանելով մեղաց. զի յարութեամբ նորա կենդանասցուք արդարութեամբ բարձր:

### ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԱՁ

Որ ընտրեցար ի սկըզբանէ անապական կոյս Մա-րիամ. լինել տաճար սըրբութեան անճառ լուսոյն

որ ի հօրէ. ‖ առ նա միշտ բարեխօսեա կեցուցանել զմեզ։ Որ առ ի քէն երկրորդ Ադամ վասն առաջնոյն յանցանաց. բնութեամբ մերով պահելով. զմահաբեր պտղոյն լուծեալ զպատուհաս. առ նա։ Արդ աղաչեա մայր Աստուծոյ ըղձնեալն ի քէն վասն մեր. զի ընդ նմին պահելով. սուրբ յարութեամբ նորա նորոգեսցուք. առ նա։

Իւղաբերից Աւետ. է Մարկոսի կարգա։ Եւ յերեկոյի շաբաթուն։ Զինչ Աւետարանին. Զամենայն աւուրս կենաց։ Եւեթ հետ կցեալ. շարական ցած ասա, և զյետինն քարոզ։ Մինչև է Յոգնաշնորհին շարա ասա և զԳիշերին ընկէ։

ՈՂՈՐՄԵԱ ԱԶ

Թինս ևմ Ողորմեա մեզ Աստուած։ Որ զմարդիկն ոչ պահելով ըզպատուիրանըն մեռաք. շնորհեցեր քեւ օրինակ մեզ պատուիրան կենաց. զի պահելով կենդանասցուք. ողո։ Որ ի խորհուրդ քո կամաւոր մահուանն եկեղեցի քո Քրիստոս. մեռանելով օրինաց մեղաց. զի յարուցեալ ընդ քեզ նորոգեսցի ի փառս. ողո։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԱԶ

Ի բարձանց փառաւորք յարութեան քո Տէր։ Որ զբաղձալին չարչարանաց խաչի քո Քրիստոս. եկեղեցի հեթանոսաց չարչարակից գոլով քեզ սրբութեամբ գովէ զփա։ Տուր մեզ Տէր մահու քո նըմանել մեռելութեամբ մեղաց. զի և կենաց քոց հաղորդել արժանասցուք կենդանաբար արքայութեանդ փա։

Առաւօտու Սաղմոս ՃԺԲ։

Կց. Եղիցի անուն։ փխ. Օրհնեցէք մանկունք։

Digitized by Google

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի: Զ. 22:

Տէրն մեր Յիսուս Քրիստոս ասէ.

ՃՐԱԳ մարմնոյ ակն է. եթէ ակն քո առատ է, ամենայն մարմինդ լուսաւոր եղիցի. ապա թէ ակն քո չար է՝ ամենայն մարմինդ խաւարին եղիցի: Իսկ արդ՝ եթէ լոյսդ որ ի քեզ է՝ խաւար է, խաւարն ո՞րչափ եւս: Ոչ ոք կարէ երկուց տերանց ծառայել. կամ զմին ատիցէ եւ զմիւսն սիրիցէ, կամ զմին մեծարիցէ եւ զմիւսն արհամարհիցէ. ոչ կարէք Աստուծոյ ծառայել եւ մամոնայի: Վասն այդորիկ ասեմ ձեզ. մի՛ հոգայք վասն ոգւոց ձերոց՝ զինչ ուտիցէք կամ զինչ ըմպիցէք, եւ մի՛ վասն մարմնոց ձերոց՝ թէ զինչ ագանիցիք. ո՞չ ապաքէն ոգի առաւել է քան զկերակուր՝ եւ մարմին քան զհանդերձ: Հայեցարուք ի թռչունս երկնից՝ զի ոչ վարեն եւ ոչ հնձեն, եւ ոչ ժողովեն ի շտեմարանս, եւ Հայրն ձեր երկնաւոր կերակրէ զնոսա. ո՞չ ապաքէն դուք առաւել էք քան զնոսա: Իսկ արդ ո՞ ի ձէնջ առ հոգալ իւրում յաւելուլ կարիցէ ի հասակ իւր կանգուն մի: Եւ վասն հանդերձի զի՞ հոգայք. հայեցարուք ի շուշանն վայրենի՝ որպէս աճէ. ոչ ջանայ եւ ոչ նիւթէ. ասեմ ձեզ՝ զի եւ ոչ Սողոմոն յամենայն ի փառսն իւրում զգեցաւ իբրեւ զմի ի նոցանէ: Իսկ եթէ զխոտն ի վայրի, որ այսօր է եւ վաղիւ ի հնոց արկանի, Աստուած այնպէս զգեցուցանէ, ո՞րչափ եւս առաւել զձեզ թերահաւատք: Մի՛ այսուհետեւ հոգայցէք եւ ասիցէք. զինչ կերիցուք կամ զինչ արբցուք կամ զինչ զգեցցուք. զի զայդ ամենայն հեթանոսք խնդրեն. քանզի գիտէ Հայրն ձեր երկնաւոր՝ թէ պիտոյ է ձեզ այդ ամենայն: Խնդրեցէք նախ զարքայութիւնն Աստուծոյ եւ զարդարութիւն նորա, եւ այդ ամենայն յաւելցի ձեզ: Մի՛ այսուհետեւ հոգայցէք վասն վաղուի՝ զի վաղիւն վասն իւր հոգասցի. շատ է աւուրն չար իւր: Մի՛ դատիք՝ զի մի՛ դատիցիք. զի որով դատաստանաւ դատիք՝ դատելոց էք, եւ որով չափով չափէք՝ չափեսցի ձեզ: Զի՞ տեսանես զշիւղ յական եղբօր քո, եւ ի քում ական զգերանդ ոչ տեսանես. կամ զիա՞րդ ասես ցեղբայր քո, թող հանից զշիւղդ յականէ քումմէ. եւ ահաւադիկ ի քում ականդ գերան կայ: Կեղծաւոր, հան

Digitized by Google

նախ զգերանդ յականէ քումմէ, և ապա հայեսցիս հանել զշիւղն յականէ եղբօր քո։ Մի՛ տայք զսրբութիւն՝ շանց, և մի՛ արկանէք զմարգարիտ ձեր առաջի խոզաց, զի մի՛ առ ոտն կոխիցեն զնոսա, և դարձեալ երգիծուցանիցեն զձեզ։ Խնդրեցէք՝ և տացի ձեզ, հայցեցէք՝ և գտջիք, բախեցէք՝ և բացցի ձեզ. զի ամենայն որ խնդրէ՝ առնու, և որ հայցէ՝ գտանէ, և որ բախէ՝ բացցի նմա։ Ո՞ իցէ ի ձէնջ մարդ՝ ցոր խնդրիցէ որդի իւր հաց, միթէ քա՞ր տայցէ նմա. և կամ խնդրիցէ ձուկն, միթէ օ՞ձ տայցէ նմա։ Արդ եթէ դուք որ չարքդ էք՝ գիտէք պարգևս բարիս տալ որդւոց ձերոց, ո՞րչափ ևս առաւել Հայրն ձեր որ յերկինս է՝ տացէ բարիս այնոցիկ որ խնդրեն զնա։ Զամենայն զոր միանգամ կամիջիք՝ թէ արասցեն ձեզ մարդիկ՝ այնպէս և դուք արարէք նոցա. զի այս իսկ են օրէնքն և մարգարէք։ Մտէք ընդ նեղ դուռն. քանի՜ ընդարձակ է դուռնն և համարձակ ճանապարհն՝ որ տանի ի կորուստ, և բազումք են որ մտանեն ընդ նա. քանի՜ անձուկ է դուռնն և նեղ ճանապարհն՝ որ տանի ի կեանս, և սակաւք են որ գտանեն զնա։ Զգոյշ լերուք ի սուտ մարգարէից՝ որ գան առ ձեզ հանդերձիւք ոչխարաց, և ի ներքոյ են գայլք յափշտակօղք։ Ի պտղոյ նոցա ծանիջիք զնոսա։ Միթէ քաղիցե՞ն ի փշոց խաղող կամ ի տատասկէ թուզ։ Այսպէս ամենայն ծառ բարի՝ պտուղ բարի առնէ, և ծառ չար՝ պտուղ չար առնէ։ Ոչ կարէ ծառ բարի պտուղ չար առնել, և ոչ ծառ չար՝ պտուղ բարի առնել։ Ամենայն ծառ՝ որ ոչ առնէ պտուղ բարի, հատանի և ի հուր արկանի։ Ապա ի պտղոյ նոցա ծանիջիք զնոսա։ Ոչ ամենայն որ ասէ ցիս՝ Տէր Տէր, մտցէ յարքայութիւն երկնից. այլ որ առնէ զկամս Հօր իմոյ որ յերկինսն է։ Բազումք ասիցեն ցիս յաւուրն յայնմիկ. Տէր Տէր՝ ո՞չ յանուն քո մարգարէացաք, և յանուն քո դևս հանաք, և յանուն քո զօրութիւնս բազումս արարաք. և յայնժամ ասացից ցնոսա՝ եթէ ոչ երբեք գիտէի զձեզ. ի բաց կացէք յինէն ամենեքեան՝ որք գործէիք զանօրէնութիւն։ Ամենայն որ լսէ զբանս իմ զայսոսիկ և առնէ զսոսա, նմանեսցի առն իմաստնոյ՝ որ շինեաց զտուն իւր ի վերայ վիմի. իջին անձրևք՝ և խաղացին գետք, շնչեցին հողմք՝ և բախեցին զտունն, և ոչ կործանեցաւ, քանզի ի վերայ վիմի հաստատեալ

էր։ Եւ ամենայն որ լսէ զբանս իմ զայսոսիկ՝ և ոչ առնէ զսոսա, նմանեսցի առն յիմարի, որ շինեաց զտուն իւր ի վերայ աւազոյ. իջին անձրևք, յարեան գետք, շնչեցին հողմք՝ հարին զտունն և անկաւ, և էր կործանումն նորա մեծ յոյժ։ Է. 27։

Եւէ Նորաստեղծեալ։ Քարոզ Խնդրեսցուք։ Կեցո. Ըն.։ Աղօթ+ Քում ամենազօր։

---

ՅԵՐԵԿՈՅԻ Հարց. Դկ. Այսօր յօրինակ։ 185։

---

# Ա. ԵՐԿՈՒՇԱԲԱԹԻ. ԱՁ

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

### ՀԱՐՑ ԱՁ

Որ հայրես քաղցրութեամբ յարարածըս քո Հայր ամենակալ. ‖ օրհնեալ ես Աստուած հարցըն մերոց։ Որ իջեր ի փրկել զարարածըս քո Որդիդ միածին. օրհնեալ։ Որ խնամես տնօրէնութեամբ զարարածըս քո Հոգիդ ճշմարիտ. օրհնեալ։

Գ. Ըզտէր ‖ Ամենայն գործըք քո ըզքեզ օրհնեն։ Որ յոչընչէ գոյացուցեր զերկինս եւ զերկիր յի ծ-չեա զմեզ Տէր մարդասիրութեամբըդ քո. ամենայն։ Որ անդադար փառաբանիս ի քո յարարածոց. ըն ծնկաւ զաղաչանըս սուրբ եկեղեցւոյ քո. ամենայն։

### ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԱՁ

Յանճառ փառաց խոնարհեցար ի մեր։ 80։

### ՈՂՈՐՄԵԱ ԱՁ

Հայր բազումողորմ. խոստովանիմ առ քեզ որպէս զանառակ որդին. թող ինձ ըզմեղս իմ և ողորմեա։ Տէր որ զըթացար ի կինըն քանանացի. զըթա եւ յիս ի մեղաւորս եւ ողորմեա։ Տէր որ դարձուցեր ըզմաքսաւորըն ի գիտութիւն ճըշմարտութեան. դարձո եւ զիս ըզմոլորեալս. եւ ողորմեա։

Digitized by Google

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԱՁ

Տէ՛ր որ ի վե՛րայ քերովբէի՛ց փառաբանի՛ս. ‖քաղցրութեամբ խո՛նարհեա՛լ ընկա՛լ զաղաչանըս մե՛ր։ Տէ՛ր որ շնորհեցե՛ր ողորմութի՛ւն ազգի՛ մա՛րդկան. քաղցրութեամբ։ Տէ՛ր որ ուսուցե՛ր մեզ յամենայն ժամ փառըս տա՛լ անուանըդ քում սրբո՛յ. քաղցրութեամբ։

---

# Ա· ԵՐԵՔՇԱԲԱԹԻ· ԱԿ

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԱՁ

Ո՛ր համագոյի՛ց ես համատի՛չ հա՛րցըն մերո՛ց Աստուա՛ծ. Յուսո՛ մեզ ա՛նդադա՛ր օրհնե՛լ զա՛հաւոր ա՛նուն քո՛ սուրբ։ Ո՛ր երգեցողա՛ցն աղօ՛թիւք հրա՛շացուցե՛ր ի մէջ հնոցի՛ն ըզքո՛ զանչա՛փ զօրու՛թի՜ւնդ. ուսո՛։ Ո՛ր ապրեցուցե՛ր զերիս մանկո՛ւնսն ի մէջ հըրո՛յն բո՛րբոքեալ բոցոյն. ուսո՛։

Գ. Ը՛զՏէր օրհնեցէ՛ք Միա՛բանութեա՛մբ բա՛րձր արարէ՛ք յաւիտեա՛ն զԱստուածն Աբրահա՛մու։ ՜Զա՛նիմանալի՛ն ի յէ՛ութեա՛ն. երկրաւո՛րքս ընդ երկնայի՛նսըն միա՛բանութեա՛մբ. բա՛րձր արարէ՛ք յաւիտեա՛ն զԱստուածն Իսահա՛կայ։ ՜Զա՛նհասն ի՛ բարձրութեա՛ն. քահա՛նա՛յք եւ ժողովո՛ւրդըք միա՛բանութեա՛մբ. բա՛րձր արարէ՛ք յաւիտեա՛ն զԱստուածն Իսրայէլի՛։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԱՁ

Ո՛ր զաւետի՛ս հոգւո՛յն ի՛ հրեղէ՛նն ի՛ հրե՛շտակէ՛ն ընկալա՛ր ուրա՜խ լե՛ր. բե՛րկրեա՛լդ Տէ՛ր ը՛նդ քե՛զ Մարիամ ա՛նհամբոնացեա՛լ։ Ա՛նըսկի՛զբըն Բա՛նըն հաճեցա՛ւ աննու՛լ մա՛րդեղութեա՛մբ ը՛սկի՜զբըն ի կուսէ՛դ։ Քրի՛ստոս Աստո՛ւա՜ծ թագաւորն յաւիտենի՛ց։ Ա՛ղաչեմք ը՛զքե՛զ

սուրբ Աստուածածին. առ Քրիստոս բարեխօսեա փրկել. զժողովուրդս իւր զոր գնեաց արեամբն իւրով:

ՈՂՈՐՄԵԱ ԱԶ

՝Աստուած բազմողորմ. խնայեա յարարածս քո Հայր ամենակալ և ողորմեա: ՝Արեգակն արդարութեան. ծագեա ի հոգիս մեր ըզլոյս ճշմարտութեան եւ ողորմեա: ՝Տուր մեզ Տէր զխաղաղութիւն. եւ փրկեա ի նեղչաց մերոց Հոգիդ ճշմարտութեան եւ ողորմեա:

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԱԶ

Քեզ վայելէ Աստուած օրհնութիւն զօրհանապազ: Զհայր և զՈրդի և ըզսուրբ զՀոգիդ. գոհութեամբ բարեբանեսցուք: Զերրորդութիւն միասնական զովեմք. եւ ըզմի Աստուածութիւն:

---

# Ա· ՉՈՐԵՔՇԱԲԱԹԻ· ԲԶ

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԱԶ

Որ յամենայնի ես կարող օրհնեմք ըզքեզ Տէր. ‖ Աստուած հարցըն մերոց: Որ անապական քոյով զօրութեամբ պահեցեր. զյուսացեալսն ի քեզ սուրբ ըզմանկունսն. փրկեա և ըզմեզ մարդասէր Տէր. Աստուած: Բարձրացուցանեմք զովելով զանուն քո սուրբ. թագաւոր ⁝ր որ յաթոռ փառաց նստիս. օգնեա մեզ ի նեղութեան մերում. Աստուած:

Գ. Գործք Տեառն ըզՏէր օրհնեցէք եւ ‖ բարձր արարէք ըզնա յաւիտեան: Տիւք եւ գիշերք ըզՏէր օրհնեցէք եւ բարձր ⁝ րձր: Իսրայէլ ըզՏէր օրհնեսցէ. եւ

Digitized by Google

տանե մ մ։ ձօ լ բարձր արարէք զնա յաւիտեանս։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԱՁ

Մեծացուցանեմք զքեզ որ ի Հօրէ Բանդ ես անճառելի ծնընդեամբ. որ ի կուսէն մարմնացար ցուցար մեզ։ Մեծացուցանեմք զքեզ որ կոխեցեր զմահ աստուածապէս. եւ լուծեր զկնիք մահու. որ ի խաչին բարձրացար կամաւ Հօր։ Մեծացուցանեմք զքեզ որ թաղեցար ի նոր ի գերեզմանի. եւ յերրորդ աւուր յարեար. որ ի յերկինս համբարձար փառօք Հօր։

ՈՂՈՐՄԵԱ ԱՁ

Ի նեղութեան իմում օգնեա ինձ Տէր. որպէս երբեմն Յովնանու և ողորմեա։ Ի յանցանաց իմոց մաքրեա զիս Տէր. որպէս երբեմն զմաքսաւորն եւ ողորմեա։ Ի նենգաւոր շրթանց փրկեա զիս Տէր. եւ յարենէ ապրեցո. և ողորմեա։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԱՁ

Ամենայն զինուորութիւնք հրեշտակաց. անդադար ձայնիւ օրհնեն զքեզ Հայր ‖ ամենակալ Աստուած եւ միայն մարդասէր։ Նոր օրհնութիւն քեզ երկրածինքս երգեսցուք. առաքեալ ի Հօրէ Որդիդ միածին. ամենակալ։ Ուրախութեամբ զքեզ գովեն արարածք. բաշխող պարգեւաց սուրբ Հոգիդ ճշմարիտ. ամենակալ։

Յայսմ չորեքշաբթի յառաւօտուն կատարեն զկարգ ապաշխարութեան, և ասեն զՏէր ամենակալն. և զԱրեւագալն շարականօքն ասա։ Նոյնպէս զՃաշու ժամս երգս և զխորհս։ Եւ երեկոյեանն ասա զՆայեա սիրովն, զԱմբիծքն և զԻ քէն հայցեմքն մինչեւ ի Ծաղկազարդի աւուրն։

# Ա· ՀԻՆԳՇԱԲԱԹԻ· ԲԿ

## ՑԱՌԱՒՕՏՈՒ

### ՀԱՐՑ ԱՁ

ԲԱՐԵԲԱՆԵԱԼ ես Թագաւոր անմահ ‖ Աստուած հարցըն մերոց ։ Հաստատեցեր ուխտս ընդ ծառայից քում Աբրահամու Աստուած ։ Բարձրացուցեր զմանկունս եկեղեցւոյ սրբոյ քո Աստուած ։

Գ. Ըզտէր օրհնեցէք սուրբք եւ ‖ բարձր արարէք ըզնա յաւիտեան ։ Տիւք եւ գիշերք ըզՏէր օրհնեցէք սուրբք եւ բարձր ։ Իսրայէլ ըզՏէր օրհնեսցէ. եւ առաւել բարձր արարէք ըզնա յաւիտեան ։

### ՄՆԾԱՑՈՒՍՑԷ ԱՁ

Ըզքեզ երբեւեալ դուռն. ով Եզեկիէլիւ մարգարէիւ. ընդ որ ոչ ոք էանց եթէ ոչ Աստուած միայն. Աստուածածին կոյս. ‖ օրհնութեամբ մեծացուցանեմք ։ Ըզքեզ որ ի մորենւոյն. ով Մովսէսիւ մարգարէիւ. ըզնոր խորհուրդ կուսին յայտնեցեր մարդկան ազգի. օրհ ։ Ըզքեզ որ ի Հօրէ անժամանակապէս. եւ ի մօրէ անթարգմանաբար. ի ժամանակի ծնընդեան ի բոլորից փրկութեան յայտնեցար Որդի բարձրելոյն. օրհ ։

### ՈՂՈՐՄԵԱ ԱՁ

Վերանցիմ ի բազմութենէ մեղաց իմոց. Աստուած ‖ խաղաղութեան օգնեա ինձ ։ Աղէկոծիմ հողմով անօրէնութեան իմոյ. Թագաւոր խաղաղութեան ։ Ի խորըս մեղաց ծովու տարաբերեալ ծփիմ. Նաւապետ բարի փրկեա զիս ։

Digitized by Google

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԱՁ

Որ բնակեալդ ես ի յերկինս. օրհնեմք մեք զքեզ։ Զօրհանապազ օրհնեսցուք զանուն սուրբ քո։ Բարձր արարէք ըզՏէր Աստուած մեր։

---

# Ա․ ՈՒՐԲԱԹ․ ԳՁ

## ՑԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԱՁ

ԲԱՐԵԲԱՆԵԱԼ ես ի յաւիտեան. || Տէր Աստուած հարցըն մերոց։ Մի բացէ առներ ի մէնջ զողորմութիւն քո Տէր։ Ըստ ողորմութեան քում փրկեա զմեզ ի նեղչաց մերոց Տէր։

Գ. ԸզՏէր || օրհնեցէք և բարձր արարէք ըզնա յաւիտեան։ Ընդըստեալն ի քերովբէական աթոռ օրհնեցէք։ Զթագաւորըն Քրիստոս և զԱստուած խաղաղութեան օրհնեցէք ժողովուրդք. եւ բարձր։ Զոր փառաբանեն զօրք անմարմնոց հրեշտակաց. քահանայք սպասաւորանելով ժողովուրդք առաւել բարձրացուցէք ըզնա յաւիտեան։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԱՁ

Որ ըզԲանն Աստուած բաւական եղեր ընդունել յորովայնի մինչ կոյս. || զքեզ մեծացուցանեմք որ օրհնեալդ ես ի կանանս։ Որ էիր լուսոյն արժանի եղեր բառնալով ի գիրկըս քո մարմնով. զքեզ։ Անարատ տաճար տընօրէնութեան կոչեցար Հոգւոյն սըրբոյ մինչ կոյս. զքեզ։

ՈՂՈՐՄԵԱ ԱՁ

Թիւնս իմ Ողորմեա ինձ Աստուած։ Ի լըսել ըզձայն փողոյն յահագին աւուրն. յորժամ հարկանէ



Digitized by Google

հրեշտակապետն եւ կոչէ ի դատաստան որդի։ Ի նըստել քո յաթոռն դատաւոր ահեղ. յորժամ անեն հրապարակութեամբ զքըննութիւն որդւոց մարդկան որդ։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԱՁ

Ի բարձանց փառաւորեալդ քեզ Աստուած։ Երկնային զինուորութիւնքըն հրաշալի ձայնիւ փառաբանեն ասելով որ նըստիս ի քերովբէս փա։ Երկրածին որդիք մարդկան սաղմոսիւք և օրհնութեամբ աղաղակեն ասելով Երրորդութիւն անբաժանելի փա։

---

# Ա· ՇԱԲԱԹ· ԳԿ

## Յիշատակ Թէոդորոսի զինաւորին․

### Ի ԳԻՇԵՐԻ

### ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԳԴ

ԱՅՍՕՐ հրեշտակաց դասքն ի յերկինս ուրախանան ի վերայ յ ճգնութեան սրբոցն։ Այսօր ճգնազգեաց սրբոց դասք ի յերկրի պըսակեցան երկնային պատուածեղէն փառօք։ Այսօր անմարմնոց զինուորութիւնքըն մեծապէս տօնեն. քանզի երկրաւոր զինաւորաց բազմութիւնքն ընծայեցան ի խորան ն սրբութեան երկնից։

Սուրբ Աստուած Հայր անըսկիզբն. որ փառաւորեալդ ես ի մէջ սրբոց քոց. օրհնեմք || ըզքեզ ընդ զուարթունս երկնից։ Սուրբ Աստուած Որդիդ միածին. որ պահեցեր յաղթող ըզճըգնութիւն սրբոց քոց. գովեմք ըզքեզ։ Սուրբ Աստուած Հոգիդ ճշմարիտ. որ նորոգեցեր ըզտիեզերըս ճշմարիտ երկրպագութեամբ սուրբ Երրորդութեանդ. բարեբանեմք ըզքեզ անլռելի ձայնիւ։

Digitized by Google

Ծընգնաւորական աշխատութեանց համբերեցին սուրբ մարտիրոսքն. եւ ըզպատերազմըն չարին վանեցին ժուժկալութեամբ. ‖ բարեխօսութեամբ սոցա Քրիստոս խընայեա ի մեզ: Որք հեղին զարիւնս իւրեանց փոխանակ արեան քո Տէր. եւ ըզբընութիւն հրապուրողին վանեցին ժուժկալութեամբ. բարե: Եւ ըզպըսակս անապական ընկալան ի քէն Քրիստոս. եւ դասաւորեցան ի դասս վերին զըւարթնոցն. բարե:

Նահատակք յաղթողք քաջք ի մարտի. երանելի սուրբ մարտիրոսք. ‖ որք վանեալ ըզթըշնամին խորտակեցէք: Հրեշտակացըն դասքըն տօնակից են մեզ. եւ ցնկք ամթոռոցն ը զուարճացեալ երկրին. ընդ վարդագոյն ձեր հեղմամբ արեան. որք: Անթառամ պըսակըն ձեզ աւանդեալ մընայ. քան զականս պատուականս գերագոյն հրաշիւք. որք:

Այսօր մարտիրոսաց դասքըն. ցընծացեալ երկրին ընդ անմահ Տէառն. Քրիստոսի Որդւոյն Աստուծոյ: Զայն ի յերկնից վըկայեալ. ասէ եկայք օրհնեալք Հօր իմոյ. ժառանգորդք երկնից խորանացն:

ՍՏԵ. Որ ընտրեցար ի կոչումն. առաքելական քարոզութեանցն արժանաւոր լինելով սուրբ Ստեփաննոս. բարեխօսեա առ Քրիստոս վասն անձանց մերոց: Որ խընդրեցեր զթողութիւն. ի վերայ քո քարաձիգ ժողովոյն սուրբ Ստեփաննոս. եւ այժըմ վասըն քո ուխտաւորացս աղաչեա զընդաջմէ Հօր նըստեալն: Որ արժանի եղեր զմարտիրոսականն առնուլ պըսակ նախ ի վըկայս. առ պըսակիչըն սըրբոց եւ վասըն մեր բարեխօսեա:

ԳՐԻ. Նահատակ բարի Քրիստոսի ընտրեալ. արքային զինուոր տէր Գրիգորիոս. ստորագլուխ կախ-

մամբ դառնաճեմ շրջմամբն արիաբար տարար. զի ուղղեսցես ըզգնացս ոտից մեր յերկինս ։ Շառաւիղ լուսազարդ ճանապարհին կենաց. երկրին աւետեաց հետեւող տէր Գրիգորիոս. մոխրաշունչ եղեր քացախ ընկալեալ հոգիաշունչ ունգամբք. պարգեւելով ուրախութեան մեզ օծումն ։ Ոսկիաձոյլ գերագոյն պատուական գլխոյն. համանմանեալ հոգւով հայր Գրիգորիոս. կլոփեալ հարուածովք եղեալ ի մամուլս աստուածազարդ գլուխ քո. որով բարձրացան գլուխք կորացեալ մեղօք ։

ՀԱՅՐ. Ուրախացան զօրք երկնից ընդ քո մեծի ճգնութեան որ ի մարմնի կառուցար նման վերին զուարթնոցն. Ըզքեզ ունիմք բարեխօս առ Հայր յերկինս վասըն մեր ։ Բղխմամբ քո սուրբ արտասուաց կենագործէիր ըզմեռեալս. նման փրկչին Յիսուսի կենագործողին Ղազարու. ըզ ։ Այլ մեք ձայնիւ ցընծութեամբ տօնեմք զքո սուրբ զյիշատակս. պատուեալ վըկայ Քրիստոսի սուրբ Հայրապետըդ Յակոբ. ըզ ։ Յանձն առեր զչարչարանս վասըն նոյեան տապանին ի հրեշտակէն ընկալար զփայտ փըրկութեան աշխարհի. ըզ ։

ՔՈ. Այսօր զանյաղթելի մարտիրոսացն. եկեղեցի տօնէ ըզյիշատակ ճգնութեան. որք ի Սեբաստիա պատերազմեալք ընդ թշնամւոյն յաղթեցին քաջութեամբ. սոցին աղաչանօք || Քրիստոս խնայեա ի մեզ ։ Այսօր անտանելի չարչարանօք. նահատակեալք ի լճին սառուցելոյ երանելի քառասունքն. որք ի բարձանց անճառելի ճառագայթիցըն նըշողիւք տապացեալք լինէին. որ իջեր ի մէջ սրբոց քոց Քրիստոս խը ։ Այսօր ի լրումն աստուածային երգոյն. անցա-

նէին ընդ ջուր մաքրեալք որպէս զոսկի փորձելով ի հուր. եւ համբարձեալք ի յերկնային զինուորութիւնսըն դասելով ընդ անմարմին զըւարթունսն. որ եւ փառաւորեալ ի մէջ սրբոց քոց Քրիստոս խընամեա։

ՄԾ. Ամենազովելի. եւ քան զերկինս բարձրագոյն որ զանհասանելի ըզՏէրն յորովայնի քում կրեցեր. եւ ցընծութիւն աշխարհի ծընար. || վասն որոյ ամենեքեան ըզքեզ միշտ մեծացուցանեմք։ Ամենապայծառ բերկրեալ միշտ կոյս որ զանբաւելի ըզբանն անճառաբար յղացար. եւ ըզմարմնացեալն Աստուած ծընանելով ի քէն. վասն։ Ի լեռնէ վէմն առանց ձեռին հատեալ. Դանիէլ գուշակեաց զանձեռըն ծնունդ քո. հարսն երկնաւոր. մայր եւ յետ ծընընդեան մընալով կոյս. վասն։

ԽԶ. Ով քառաթեւ լուսածին զերապանծ նիշ կառուցող կենացն ամենից. միշտ բազկատարած առ քեզ էին։ Քառակուսի ազանց հովանի և պահապան ի յերս և ի մուտս. փրկութիւն ի յայսոց եւ պարիսպ ամրութեան։ — Փառք Հօր։ Դրոշմ ըզգայութեան եւ կնիք ի դէմս ամենից. դու եւ յաստուածայինսըն կատարիս խորհուրդ. յորմէ արեգակնային փայլեն ճառագայթք։

— Այժմ և միշտ։ Լըցէք ըզտեղի անկելոցն. ապըստամբողական թըշնամւոյն որ ի յերկնից վայր անկեալ։

---

ՅԱՌԱՒՕՏՈՒ ՀԱՐՑ ԳԿ. Զինուորութիւնք։ 95։

ՄԱՆԿՈՒՆՔ ԴԶ

Որ ընտրեցեր ի սկըզբանէ զհաճոյս եղեալսն ի մարդկանէ. որ եւ զինուորեալ քեզ Թէոդորոս զօր

խառնեցեր ի դասս երկնաւոր զօրացդ. | աղաչանօք սորա կեցո ըզմեզ Քրիստոս Թագաւոր։ Որ յօրինակ աներեւոյթ վիշապ օձին զոր և կոխել հրամայեցեր. արիաբար Թէոդորոս զերեւելին գլուխ վիշապին խորտակեաց քոյով զօրութեամբդ. աղաչանօք։ Որ ըզհուրն արկեալ յերկիր բորբոքեցեր յոգիս սրբոյն Թէոդորոսի. որ եւ ըզտաճարն լուցեալ ըզկռոցն եւ մեհենից զանձն ողջակէզ քեզ պատարագ ընդունելի. աղաչանօք։

ՑԵՐԵԿՈՑԻ ՀԱՄԲ. ԴՁ. Որ զօրէնս։ Տես ի վայր։

# Բ. ԿԻՐԱԿԷ. ԴՁ
## ՔԱՌԱՍՆՈՐԴԱՑ

### Ի ԳԻՇԵՐԻ

*ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԴՁ*

Որ զօրէնս սրբութեան պահոց նախ ի դրախտին աւանդեցեր. զոր ոչ պահելով նախաստեղծիցըն ճաշակմամբ պտղոյն ճաշակեցին ըզդառնութիւն մեղաց եւ մահու. վասն որոյ շնորհեա մեզ Տէր ճաշակել ըզքաղցրութիւն քոց պատուիրանաց։ Որ զանազան վիրօք մեղաց հարաք յոգիս ի թշնամւոյն. եւ ի բազմապատիկ հիւանդութիւնս կարօտացաք մարդասիրին դարմանոյն ըզգացուցս մեր. վասն որոյ բժշկեա ըզմեզ Քրիստոս որպէս մարդասէր։ Որ եկիր ի փրկութիւն մարդկան ծնընդեամբ կուսին Մարեամու. եւ կենդանարար քո յարութեամբդ հրաւիրեցեր ըզմահացեալս ի յարութիւն անմահութեան. վասն որոյ աղաչանօք մօր քո կեցո զմեզ Փրկիչ։

† Որ գերագոյն փառօք բարձրացուցեր զմանկունս

եկեղեցւոյ քո Քրիստոս. խոնարհութեամբ քո ճանապարհաւ առաջնորդելով ի յերկնային վայրս հրեշտակաց. աղաչեմք առաջնորդեա մեզ Տէր ի յարքայութիւն։ Որ զդառնութեան պտղոյն ճաշակն որով մեռաք արդարութեան. պահելով քո քառասնօրեայ փոխեցեր ի քաղցրագոյն օրինաց քոց ճաշակումն. աղաչեմք արբո մեզ Տէր զուրախարար սիրոյ քո բաժակ։

ՎԱՐ. Ի Թաբոր ի լերին ձեւացուցեր ըզքո բնութիւնդ անճառելի գոյացութեամբ ‖ ընդ որս և մեք ցնծութեամբ երգեմք քեզ ողորմեա մեզ մարդասէր։ Աշակերտացդ հիացեալ. բարբառէին ըզխորհուրդս ի տեսանել սրտից իւրեանց ընդ։ Աքանչելի մեծ խորհուրդ զնորոգութեանդ քոյ սրբոց առաքելոցն ծանուցեր բարբառով. ընդ։ Սոսկալի հիացմամբ զայլակերպութիւն քո Տէր. առաքելոցն տեսեալ յօրինէին քեզ տաղաւար. ընդ։ Հովանացեալ ամպ լուսեղէն. եւ ըզհայրականն լուեալ ըզձայն եթէ դա է Որդի իմ սիրելի. ընդ։

Քրիստոս Աստուած մեր. շնորհեա մեզ ընդ Պետրոսի և ընդ որդւոցն Զեբեդեայ. արժանաւորիլ քում աստուածային տեսլեանդ։ Համբարձցես ըզմեզ Տէր. առաւել քան ըզզգալի զԹաբորական ըզլեառն յերկնաբերձ եւ յիմանալի խորանսդ։ Վասն որոյ և մեք ըզքակտելիս մեր յարմարեսցուք քեզ հոգեւորական տաղաւար որպէս միայնոյ մարդասիրի եւ փրկչի։

Այսօր ըզխորհուրդ քո կրկնակի դասատեանն աշակերտաց քոց յայտնեցեր Քրիստոս ի Թաբօր լերինն։ Այսօր ըզփրկական քո լոյս աշխարհի ըզման վըկայեալ. քեզ երեւեցան Մովսէս եւ Եղիա։ Սրբեալ

Տէր զմեղուցեալ քո ծառայից ըզգայարանս և շնոր-
հեա տեսանել ըզքեզ և լսել ըզհայրական ըզձայնն.
Եթէ դա է Որդի իմ սիրելի։

ԱԳ. Գթածոր արդար. որ հաստատեցեր ի մեզ զա-
տող բնութեան ըզմիտըս մեր. շնորհեա սըմա դառնալ
զանձինս իրաւամբք և արդարութեամբ. ||խնայեա
ի մեզ Տէր ողորմութեամբ։ Փեսայ երկնաւոր հարսին
քո եկեղեցւոյ. զայրն եղեալ ի քէն զհոգիս մեր.
մաքրեա գթութեամբ և յօդեա ի քեզ միութեամբ.
խնայեա։ Որ մահուամբ մարմնոյ քո մեռուցեր ըզմեղս.
և յարութեամբ քո յարուցեր ի մեզ զարդարութիւն.
տուր զօրութիւն հոգւոյս կամաց հնազանդել ըզկամս
մարմնոյս. խնայեա։

Որ փառաբանիս ի հրեշտակաց ընդ Հօր և Հոգւոյն.
Քրիստոս Որդի Աստուծոյ. խոնարհեցար ի հողեղէն
բնութիւնս համբերելով խաչի վասն մեր. ||վասն
որոյ գթա ի մեզ մարդասէր Փրկիչ։ Որ ըզհին
մարդըն մեր մեղաց ի խաչին սպաներ. նորոգե-
լով ըզնոր մարդն արդարութեան յուսով կենացն
անվախճանից ի նորոգումն Նոր Ադամայ. վասն։
Կենդանարար քո յարութեամբդ անմահ թագաւոր.
կենդանացո զմեռեալըս մեղօք կենդանական գոր-
ծովք բարեաց ըստ լուսաւոր քոց պատուիրանաց.
վասն։ Շնորհեա մեզ Տէր ըզգաստութիւն արթուն լի-
նել ըստ դըռնապանին. զի ի բաղխել տուրք փե-
սային բացցուք ըզսիրտըս քոց մըտից ընդ քեզ և Հօր
քո և Հոգւոյդ լինել օթևան. և երգեսցուք
Երրորդութեանդ ըզփառս ի բարձունս։

Քեզ վայելէ օրհնութիւն Աստուած։ Որ անմարմնո-
ցըն դասուց. հաստիչ ես բանիւ. քեզ։ Որ մարմնաւո-

րանց ազգի. արարող ես ձեռօք. քեզ: Որ մեռելոցն յուսով. յարութիւն ես ձայնիւ. քեզ:

ՄՏ. Անարատ կոյս Աստուածածին Մարիամ սրբուհի և մայր Քրիստոսի. յարգանդի տարար զանտանելին ամենեցուն. Օրհնութեամբ ըզքեզ Աստուածածին. մեծացուցանեմք: Ըզքեզ երկնային դուռն զոր ետես Եզեկիել. և ասրըն զոր ծանեաւ Գեդէոն. սերովբէ հողմեղէն վեհագոյն քերովբէից. օրհնութեամբ: Երբեմն խորհուրդըս սոսկալին ի քեզ տեսանի Աստուածածին. յղութիւն անսերմնական ծնունդ անարատ. կուսութիւն յետ ծննդեան մնալով անապական. օրհնութեամբ:

ԽՋ. Ի յերկնից երևեալ նշանն յաղթութեան. այսօր. հեթանոսաց ծագեաց լոյս ողորմութեան: Եւ բազմութեան ժողովոյն. տեսանելին այսօր. սուրբ ըզխաչըն լուսոյ ճառագայթիւք զարդարեալ: Ընդ երևումըն սրբոյ խաչի քո Քրիստոս. այսօր Երուսաղէմ մեծապէս պանծացաւ յոյժ: Եւ ըզծագումըն լուսոյ աստուածային նշանի քո. ճառագայթիւք տեսանիցէր բազմութեան ժողովոյն: — Փառք Հօր: Ամենայաղթ զօրութիւն խաչի քո Քրիստոս. որ ցուցաւ ի յօգնութիւն ընդդէմ թշնամւոյն. պատերազմեալ զօրութեամբ քով:

— Այժմ և միշտ: Որ անապական ծննդեամբդ քո ածեր զերկրածինս նախամօրն. Մարիամ մայր Աստուծոյ բարեխօսեա առ միածին Որդին լուծանել զկապանս մեղաց մերոց. և աղաչեա փրկել զանձինս մեր ի փորձութենէ:

---

## Օրթի

### Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու. Դ. 43:

### Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ իբրեւ տիւ եղեւ՝ ել գնաց յանապատ տեղի. եւ ժողովուրդքն խնդրէին զնա. եկին մինչեւ առ նա՝ եւ արգելուին զնա, զի մի՛ գնասցէ ի նոցանէ: Եւ նա ասէ ցնոսա. եւ այլոց քաղաքաց պարտ է ինձ աւետարանել զարքայութիւնն Աստուծոյ, զի յայն իսկ առաքեցայ: Եւ քարոզէր ի ժողովուրդսն Գալիլեացւոց: Եւ եղեւ ի խռնել զնովաւ ժողովրդեանն եւ լսել զբանն Աստուծոյ, եւ ինքն կայր առ ծովակին Գեննեսարեթայ: Եւ ետես երկուս նաւս՝ զի կային առ ծովակին, եւ ձկնորսքն ելեալ ի նոցանէ՝ լուանային զգործիսն: Ել նա ի մի նաւուցն՝ որ էր Սիմովնի, եւ աղաչեաց զնա սակաւիկ մի տանել ի ներքս ի ցամաքէն. նստաւ՝ եւ ուսուցանէր ի նաւէ անտի զժողովուրդսն: Եւ իբրեւ լռեաց ի խօսիցն, ասէ ցՍիմովն. խաղացո՛ ի խորն, եւ արկէ՛ք զգործիս ձեր յորս: Պատասխանի ետ Սիմովն եւ ասէ ցնա. վարդապետ՝ զամենայն գիշերս աշխատ եղեաք՝ եւ ոչինչ կալաք, բայց վասն քո բանիդ արկցուք զգործիսս: Զայս իբրեւ արարին՝ փակեցին ի ներքս բազմութիւն ձկանց յոյժ, մինչեւ պատառէին ուռկանք նոցա: Եւ ակնարկէին որսակցացն ի միւս նաւուն՝ գալ օգնել նոցա. եւ եկին եւ լցին երկոքին նաւքն՝ մինչեւ մերձ յընկղմել նոցա: Իբրեւ ետես Սիմովն Պետրոս՝ անկաւ առ ծունկսն Յիսուսի եւ ասէ. ի բա՛ց գնա յինէն Տէր, զի այր մեղաւոր եմ ես: Քանզի ահ պատեաց զնա եւ զամենեսեան որ ընդ նմայն էին՝ վասն որսոյ ձկանցն զոր ըմբռնեցին. նոյնպէս եւ զՅակովբոս եւ զՅովհաննէս՝ զորդիսն Զեբեդեայ, որ էին որսակիցք Սիմովնի: Եւ ասէ ցՍիմովն Յիսուս. մի՛ երկնչիր՝ յայսմ հետէ զմարդիկ որսայցես ի կեանս: Եւ հանեալ զնաւսն ի ցամաք, թողին զամենայն եւ գնացին զհետ նորա: Ե. 11:

---

ՑԵՐԵԿՈՑԻ ՀԱՄԲ. ԴՁ. Որ գերագոյն փառօք: 202:

---

Digitized by Google

# Բ · ԵՐԿՈՒՇԱԲԱԹԻ · ԴԿ

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

### ՀԱՐՑ ԱԿ

ԶԱՆՈՒՆ քո Քրիստոս օրհնեմք. ‖ փառաւորեմք ընդ-
քեզ Աստուած հարցըն մերոց։ Իջեր ի հնոցն ի
Բաբելոնի. փառաւորեմք։ Եւ փրկեցեր զերիս ման-
կունս ի հրոյն բռնութենէ. փառաւորեմք։

Գ. Ըզտէր ‖ օրհնեցէք եւ բարձր արարէք ըզնա
յաւիտեանս։ Էակիցըն հօր իջեալ ի հնոցն եւ թօ-
թափէր ըզհուրն ի նոցանէ եւ անկէզ պահեալ ըզման-
կունսն ի հրոյն. օրհնեցէք։ Եւ մանկունքն ի հնոցին
գոհաբանէին. որ պահեցեր ըզմեզ ի հրոյս եւ արժա-
նի արարեր օրհնել ըզքեզ Աստուած. եւ գովել զա-
նուն քո յաւիտեան։

### ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԱԿ

Ուրախ լեր Աստուածածին. տաճար անխախտելի
ըզքեզ մեծացուցանեմք։ Ցընծայ անարատաբար. եւ
զԱստուած վայելչապէս ծընար. ուրախ։ Երգէ մար-
գարէն սուրբ է տաճար քո սքանչելի արդարութեամբ
եւ գունդ երկնային ուրախ։

### ՈՂՈՐՄԵԱ ԱԿ

Ծով կենցաղոյս. հանապազ զիս ալէկոծէ։ Մըր-
րըկեալ ալիք. թըշնամին ինձ յարուցանէ։ Նա-
ւապետ բարի. լեր անձին իմոյ ապաւէն։

### ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԱԿ

Ի համբառնալ իմում առ քեզ զաչս իմ. օգնեա ինձ
Տէր։ Ի յօրհնութիւն նոր օրհնեսցուք զքեզ Քրիստոս
փրկիչ մեր։ Այցելու մեր եւ փրկիչ կեցո զանձի-
նըս մեր։

---



Digitized by Google

# Բ. ԵՐԵՔՇԱԲԱԹԻ. ԱՋ

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

### ՀԱՐՑ ԱԿ

Որ խոնարհեցար ի տկարութիւնս մեր մարդասէր Տէր. օրհնեմք ըզքեզ ‖ Աստուած հարցըն մերոց։ Եւ բարձեր ըզմեղըս մեր չարչարանօք քո. շնորհեաւ բանաւոր հօտի օրհնել զանուն քո անդադար Աստուած։ Որ արարեր ըզքանչելիս ի հնոցին. անբաւ է մեծ ողորմութիւն քո մարդասէր Աստուած։

Գ. Ըզ Տէր օրհնեցէք ‖ բարձր արարէք ըզնա յաւիտեան։ Եցէք Որ ըզհուր հընոցին շիջոյց. եւ զմանկունս ապրեցոյց ի բոցոյն բարձր։ Նսցէ Զօրութեամբ սուրբ Հոգւոյն փրկեցան Անանիանքն. եւ երգէին միաբանութեամբ բարձր։

### ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԱԿ

Անարատ տաճար բնակարան անբաւ Բանին Աստուծոյ. Մարիամ սուրբ կոյս ‖ զքեզ և ըզծընեալն ի քէն մեծացուցանեմք։ Յարգանդի կրեցեր որ յառաջ քան զյաւիտեանս ի Հօրէ ըզԲանն. եւ ծընար մարմնով. զքեզ։ Արդ խընդրեմք ի քէն անդադար բարեխօսեա վասն անձանց մերոց. առ Որդին քո միածին փրկել ըզմեզ ի փորձութենէ և յամենայն վտանգից մերոց։

### ՈՂՈՐՄԵԱ ԱԿ

Մերձ եմ յընկըղմել օգնեա ինձ նաւապետ բարի. քանզի ծանրացան ի վերայ իմ բեռինք մեղաց։ Աստուած յօգնել ինձ փութա քանզի խորքն չարեաց ընկըղմեն զիս յանդունդս. այլ դու նաւապետ լեր և ինձ ձեռընտու։ Փրկեա ի վտանգէ ըզնաւաբեկս ի յալեաց ծովէ. քանզի կորընչիմ ի մեղաց անօրէնութեան իմոյ։

Digitized by Google

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԱԿ

Բարձրեալ անհաւոր. Տէր փառք քեզ: Բարձրեալ վասըն վերին աթոռոյն. անհաւոր վասն ահեղ ատենին. բարձրեալ: Բարձրեալ ես դու յերկինս Աստուած. յամենայն երկրի են փառք քո. բարձրեալ: Զի դու բարձրացար ըզմեզ փրկեցեր. նըստար ընդ աջմէ Հօր մեզ կեանըս շնորհեցեր. բարձրեալ:

---

# Բ· ՉՈՐԵՔՇԱԲԱԹԻ· ԱԿ

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԱԿ

ԱՍՏՈՒԱԾ հարցըն մերոց բարեբանեալ է անուն քո յաւիտեան: Վասն ուխտի հարցըն մերոց. Տէր մի մատներ ի սպառ վասն անուանըդ քում սրբոյ: Առաւել փառաւորեալ է անուն փառաց քոց. ամենայն յաւիտեան:

Գ. Ըզտէր օրհնեցէք եւ || բարձր արարէք ըզնա յաւիտեան: Տիւք եւ գիշերք ըզտէր օրհնեցէք եւ առաւել բարձր: Իսրայէլ ըզտէր օրհնեսցէ. եւ առաւել բարձր արարէք ըզնա յաւիտեան:

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԱԿ

Ով գերահրաշ ծաղիկ բուրեալ յեդեմայ. հոտ անմահութեան ծնընդոցս Եւայի յորմէ սփռեցաւ մահ ընդ տիեզերս || օրհնութեամբ ըզքեզ մեծացուցանեմք: Դու լուծիչ երկանց բարձող անիծից. ծագումն արեւուն լուսոյն ճըշմարտի որով հերքեաւ խաւարն առաջին. օրհ: Ըզքեզ ունիմք բարեխօս կոյս անհարսնացեալ մայր անարատ Էմմանուէլի տաճար Բանին Հօրն երկնաւորի. օրհ:

ՈՂՈՐՄԵԱ ԱԿ

Աղաչեմ ըզքեզ Տէր պարգեւեա ինձ. ապաշխա-

Digitized by Google

րութեամբ լըւանալ ըզմեղս իմ եւ ողորմեա։ Զար-տասուս իմ և զհառաչանըս սըրտի իմոյ․ մարդասիրու-թեամբըդ քո ընկալ Տէր և ողորմեա։ Մերձեցին խընդըրուածք իմ առաջի քո Տէր․ բարերարութեամբըդ քո խնայեա յիս եւ ողորմեա։

ՏԷՐ ՑԵՐԿՆԻՑ ԱԿ

Տուք փառս Աստուծոյ բընակելոյն ի յերկինըս միաբանութեամբ։ Բընակելոյն ի սըրբութեան մատուցուք զաղօթս մեր և խընդրեսցուք զողորմութիւն ի բարերար Տեառնէ մերմէ։ Յանճառ փառաց խոնարհեցաւ վասըն փըրկութեան մերոյ․ զի դարձուսցէ ըզմոլորեալս ի գիտութիւն ճըշմարտութեան։ ԶԱստուած օրհնեսցուք ի սըրբութեան անձանց մերոց․ զոհաբանելով և խընդրեսցուք զողորմութիւն ի բարերար փըրկչէն մերմէ։

---

# Բ․ ՀԻՆԳՇԱԲԱԹԻ․ ԲՁ

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԱԿ

ՕՐՀՆԵԱԼ եւ փառաւորեալ Աստըւած հարցըն մերոց։ Արդար ես յամենայնի․ Տէր կեցո զանձինըս մեր։ Եւ այնքն ոչ դադարէին զորս արկեալ էր և գնային ի մէջ հընոցի հըրոյն․ զԱստըւած փառաւորէին։

Գ․ ԸզՏէր օրհնեցէք ‖ բարձր արարէք ըզնա յաւիտեան։ Իջմամբ Որդւոյն Աստուծոյ բոց հնոցին ցօղանայր․ անդադար գովելով բարձր։ Յաղթող զօրութեամբ զօրհնաբանսն պարեցոյց․ ընդ նոսին գովելով բարձր։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԱԿ

Զանճառելի ըղձոյս աստուածութեանն տընօրինաբար կրեցեր ի քում յորովայնի Մարիամ մայր եւ կոյս. ‖ օրհնութեամբ ըզքեզ մեծացուցանեմք։ Ի մանաւոր լուսոյն զարհուրեցան դասք առաքելոցն. այլ ի քեզ բովանդակ կրեցեր ըզհուր աստուածութեանըն Մարիամ մայր եւ կոյս. օրհնութեամբ ըզքեզ մեծացուցանեմք։ Առաքելոցըն հովանացեալ ամպ լուսեղէն. զերագոյն քեզ հոգւոյն սըրբոյ եւ զօրութիւն բարձրելոյն հովանաւորեալ սուրբ Աստուածածին. օրհնութեամբ։

ՈՂՈՐՄԵԱ ԱԿ

Աղաչեմ ըզքեզ Հայր երկնաւոր. մի դարձուցաներ զերեսս քո յինէն. զի նեղեալ եմ ես վաղվաղակի լուր ինձ Տէր։ Մոլորեալ անձն իմ անօրէնութեամբ. մի կորուսաներ զիս Տէր ըստ անօրէնութեան իմոյ. որ խնդրողդ ես մոլորեալ ոչխարիս։ Ծանրացեալ մեղօք ընկղմի անձն իմ. ընկալ զիս որպէս երբեմն ըզՊետրոս. որ ծփիմս ալէկոծեալ յանցանօք։

ՏԷՐ ՑԵՐԿՆԻՑ ԱԿ

Փառք պատիւ եւ գոհութիւն. Տէր անուանդ քում սըրբոյ։ Քում սըրբոյ տէրութեանդ վայելէ փառք պատիւ եւ երկրպագութիւն։ Օրհնեալ Տէր բարերար. որ ուսուցեր մեզ յամենայն ժամ փառս տալ անուանդ քում սըրբոյ։

---

# Բ. ՈՒՐԲԱԹ. ԲԿ

## ՑԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԱԿ

ԶԱՆՃԱՌ էութիւն եւ ըզմի աստուածութիւն բարեբանեմք Տէր Աստուած հարցըն մերոց։ Որ

վասըն հարցըն մերոց. իջեր ի փրկել զարարածըս քո։ Տէր Աստուած հարցըն մերոց։ Որ նըստիս ի քրովբէս եւ հայիս քաղցրութեամբ յարարածըս քո Տէր։

Գ. Ըզ Տէր օրհնեցէք եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան։ Տիւք եւ գիշերք ըզ Տէր օրհնեցէք. եւ առաւել բարձր։ Իսրայէլ ըզՏէր օրհնեսցէ. եւ առաւել բարձր արարէք ըզնա յաւիտեան։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԱԿ

Որ ըզկեանսն անմահարար մահկանացու բնութեամբս ի քեզ կրեցեր սուրբ կոյս Մարիամ. որով մեռեալքս որ յԱդամայ կենդանացաք յուսով յարութեան. ‖ առ նա միշտ բարեխօսեա վասն անձանց մերոց։ Որ ըզԲանն անեղական զէակն էից գոյացութեանց. անճառաբար ծընար մարմին եղեալ ի փրկութիւն եղականացս. առ։ Որ ըզպըտուղն ի քէն կենաց ընծայեցեր մեռեալն Ադամայ. զորոյ պահօք քառասնօրեայ քաւեաց զպըտղոյն ճաշակումն եւ յանվախճան ըզնորայն վերածեաց ի կեանս. առ։

ՈՂՈՐՄԵԱ ԱԿ

Թիւնս իմ Մեղայ քեզ Տէր. քաւեա զիս։ Մեղաք անօրինեցաք ամենեքեան. ոչ պահեցաք ըզպատուիրանըս քո. մեղայ։ Դարձիր Տէր ի բարկութենէ քումմէ. անցո ի մէնջ ըզցասումըն քո. մեղայ։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԱԿ

Որ Տէրդ ես երկնի եւ երկրի. ըզքեզ օրհնեմք ըզհամբարձումն երկնից հոգեւոր երգով։ Օրհնեմք ըզքեզ Քրիստոս փառաց թագաւոր. որ շնորհեցեր ըմեզ

ձայնակից լինել զուարթնոց երկնից ։ Սուրբ Երրորդութիւն անման. աղօթիւք սրբոց քոց կարգամք առ քեզ լուր ձայնից մերոց ։

---

# Բ · ՇԱԲԱԹ · ԳԶ

## Ս· կիւրղի Երուսաղեմայ հայրապետին. եւ միւս կիւրղի եպիսկոպոսին եւ մօրն նորա Աննայի ։

### Ի ԳԻՇԵՐԻ

### ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԳԶ

ԶԱՐԻԱԿԱՆ մահ սրբոց քոց Քրիստոս ընդ երկնային զօրսն այսօր երգակցեալ տօնեմք. որք հանդիսացան ընդդէմ բռնութեան թշնամւոյն ։ Անմարմինք ի մարմնի ցուցան զերիվերոյ սրոյ և հրոյ տանջանաց. զպատուական մահս իւրեանց ընծայեցին քեզ Քրիստոս բանաւոր զենմունք ։ Նահատակեալքդ ճգնութեամբ ի փորձ զանազան տանջանաց. համբերութեամբ վանեալ զթշնամւոյն պատերազմ. փոխեցան ի զօրս վերին զուարթնոցն ։

Երանելի սուրբ հայրապետք. չարչարեալք վասն Տեառն համբերեցէք. յաղթելով բռնաւորին ‖ դասակից եղէք վերնոցն ։ Ճգնեալ նահատակեցայք յերկրի. յաղթողք ի պատերազմի կոխելով զսատանայ. դասակից ։ Լուսաւորեալք երկնային լուսովն պայծառացեալք ի հոգւոյն սրբոյ. բարեխօսեցէք առ Տէր վասն անձանց մերոց ։

Երանելի սուրբ հայրապետք որք կամաւ չարչարեցայք յանձն առէք զհամբերութիւն. յարժանաւոր աղօթս ձեր յիշեսջիք զանձինս մեր ։ Փոխանակ արեանն Տեառն. ձեր արիւնդ հեղաւ յերկրի եւ հօտ

Digitized by Google

անոյշ բուրեամբ յաշխարհ. || յարժանաւոր աղօթըս ձեր յիշեսջիք զանձինըս մեր: Փոխանակ անցաւորիս. ձեզ անանցն է պատրաստեալ պըսակ փառաց ի Քրիստոսէ. յարժանաւոր:

Ընդ վերին զըւարթունըսըն բարեբանեմք || ըզքեզ Տէր. սուրբ սուրբ սուրբ ես Տէր զօրութեանց կեցո ըզմեզ: Ցնծանակաւ սըրբոց մարտիրոսաց գոհաբանեմք ըզքեզ: Երեքսըրբեան ձայնիւն աղաղակեմք առ քեզ:

Զանյաղթելի ճըգնաւորացն ըզյիշատակս. || եկայք հաւատացեալք ամենեքեան պատուեսցուք: Քանզի մարմին ունելով զտանջանսն արհամարհեցին. Նըմանա- ղըք լինելով չարչարանաց Փըրկչին. եկայք: Քանզի տեսարան եղեն հրեշտակաց եւ մարդկան. զյաղթու- թեան պըսակն ի Քրիստոսէ ընկալան. եւ բարեխօսեն առ Տէր վասն անձանց մերոց:

Ըզպըսակիչըն սըրբոց և զհանգուցեալն ի քերովբէս. անդադար || ձայնիւ երգելով. օրհնեցէք ըզՏէր յօրհնութիւն ի նոր: Այսօր տօնէ եկեղեցի ըզյիշատակ սըրբոց մարտիրոսացն. ընդ որս եւ մեք ձայնիւ:

ՅՈՎ. Ճրագ ճըշմարտութեան սուրբ Յովհաննէս Մըկըրտիչ. որ ծագեցար ի յերկրի. || աղօթիւք սորա Տէր լուր մեզ և ողորմեա: Մարգարէ և առաքեալ Աստուած- որդւոյն. եւ ձայն բարբառոյ անդ արարող տիեզերաց. աղօթիւք: Որպէս գարուսեակըն ծագեալ ի յերկրի. եղեւ կարապետ արեգականն արդարութեան. աղօթիւք:

ԳՐԻ. Այսօր տօնէ եկեղեցի ուրախութեամբ ըզյի- շատակ սըրբոյն Գրիգորի. որով լուսաւորեալ պայծա- ռացաւ վայելչապէս. ի հանդերձըս յոսկեհուռըս զար- դարեալ եւ պըսակեալ. || օրհնեցէք մանկունք զՔրիս-

տես Թագաւորն ։ Այսօր ցընծան նորածնեալ որդիք լուսոյ յիշատակաւ սուրբ Լուսաւորչին. որով հրաւիրեցան ի հարսանիսն անապական. մըտանել ընդ փեսային երկնաւորի ի յառագաստըն լուսեղէն. օրհ ։ Այսօր քահանայք հոգեւոր պատարագին ըսպասաւորք վերապատուեն ըզքահանայապետըն սուրբ. որով երկնայնոց քահանայութեանցըն հաղորդեալք. յոր վերափոխեալ այսօր մըտանէ ի սրբութիւն սրբոց միշտ բարեխօսել առ Տէր վասըն մեր. օրհ ։

Մտ. Որդւոյն լեր Աստուածածին յոյս և փըրկութեան մայր. ըզքեզ ընդունող լուսոյ մեծացուցանեմք ։ Ըզքեզ լուսոյ մայր և կոյս. ըզքեզ զանձըդ կենաց աստուածային. ձայնիւ ցընծութեամբ մեծացուցանեմք ։ Մայր սուրբ անարատ լուսոյն. հրեշտակային օրհնութեամբ պատուեալ ըզքեզ մեծացուցանեմք ։

Իզ. Այսօր ուրախացեալ ցընծան երկընից բազմութիւնքն. ի նաւակատիս սուրբ եկեղեցւոյ. քանզի շնորհեցաւ մեզ քահանայապետ յաւիտենից. ի լուսաւորել զկաթուղիկէ սուրբ զեկեղեցի. ‖ փառ ա. ծ- ւոցք գալըստեան քո Տէր ։ Այսօր սիւն լուսոյ հաւանեալ եղեւ ի մեզ ի բարձանց. քանզի Թագաւորն երկնաւոր նկարէ ի սուրբ եկեղեցի. եւ զօրք հրեշտակաց ծառայեալ տօնեն ընդ մարդկան. փա ։

— Փառք Հօր ։ Այսօր քահանայապետ ճըշմարիտ աստուածային օրինօքըն պատուեալ. կանգնէ ըզքառանկիւն սեղան խաչին. արժանապէս պատարագեալ բաշխէ զմարմին եւ զարիւնըն Տեառն. մաքրապէս մերձեցարուք փըրկեալք նորոգ ժողովուրդք. եւ հայցեցէք ի Քրիստոսէ զի շնորհեսցէ ըզսա մեզ ընդ երկայն աւուրս ։

Digitized by Google

— Այժմ և միշտ ։ Որ անթառամ փառօք պըսակէ ըզզօրութիւնս իւր. եւ ի դասս լուսեղէնըս վերացոյց. օրհնեցէք ըզՏէր յօրհնութիւն ի նոր ։

---

ՅԱՌԱՒՕՏՈՒ ՀԱՐՑ ԴՋ. Որք հաղորդեցան ։ 99 ։

ՄԱՆԿՈՒՆՔ ԴՋ

Մանկունք նոր Սիոնի. փառաբանիչք սուրբ Երրորդութեանն. ‖ Ըզյիշատակ սրբոյն Կիւրղի հայրապետին. տօնելով այսօր ընդ զօրս անմարմնոցն. օրհնեցէք ըզՏէր յօրհնութիւն ի նոր ։ Ի յարկի սրբութեան եւ ի տեղւոջ փառաբանութեան. ըզյիշատակ ։ Քահանայք և պաշտօնեայք միաբան հաւատացեալք. ըզյիշատակ ։

---

ՑԵՐԵԿՈՑԻ ՀԱՄԲ. ԳԿ. Օրհնեմք զքեզ ։ Տէ~ է ճ~ոյ ։

---

## Գ. ԿԻՐԱԿԷ. ԳԿ

## ՔԱՌԱՍՆՈՐԴԱՑ

---

### Ի ԳԻՇԵՐԻ

ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԳԿ

ՕՐՀՆԵՄՔ ըզքեզ անըսկիզբըն Հայր Որդւոյդ միածնի. զոր առաքեցեր ի դարձուցըն մոլորեալ ոչխարին. դարձո եւ զմեզ ի մեղաց Որդւոյ քո չարչարանօք ։ Գովեմք ըզքեզ Բան եւ լոյս որ զտիրական քո պատկեր լուսով ճրագի քո գըտեալ վերականգնեցեր. կանգնեա զանկեալըս մեղօք քոյին սուրբ չարչարանօք ։ Բարեբանեմք զփառակիցըդ Հօր զՀոգիդ ճըշմարիտ. որ նորոգեցեր ըզհնացեալըս մեղօք հընոյն Ադամայ. Նորոգեա եւ զմեզ ի մեղաց նորոգութեամբ քո

Digitized by Google

շնորհաց։ Ուրախացիր բարձրելոյն հովանացեալ զօ-
րութեամբ եւ բնակարան սուրբ Հոգւոյն որով ծնար
զԲանն Աստուած. բարեխօսեա վասն մեր Աս-
տուածածին Մարիամ։

† Լոյս ի լուսոյ ծնունդ և ծագումն. որ եկիր ի
խնդիր մոլորեալ աշխարհի բնութեանս. զոր ընդ խա-
չին բարձեր ի վերայ ուսոյդ. Մաքրեա զմեզ ի մե-
ղաց մերոց։ Սուրբդ սրբոց էից մաքրութիւն. որ
ածեր տան քո աւել ի մեղաց զաշխարհս մաքրելով.
Ի նմին գտեալ զպատկեր քո նորոգեցեր. նորոգեա
զմեզ ի հնութենէ մեղաց։ Ընդ անառակին որդւոյ
գոչեմք առ հայրդ գթած. մեղաք յերկինս եւ առա-
ջի քո քաւիչ յանցանաց. եւ ընդ առաջ սիրով գըր-
կեա համբուրիւ. մաքրեա։

Շնորհեա մեզ Տէր ընդ աղքատաց օրինակին Ղա-
զարու ժուժկալութիւն. զի կամաւոր աղքատութեամբ
արքայութեանդ երկնից ընդ նմին լիցուք արժանի.
Լուր մեզ եւ ողորմեա Քրիստոս Աստուած։ Որ փո-
խանակ հացին կարօտութեան զհացն անմահութեան
նմա շնորհեցեր. եւ ընդ մեծատանն անգթութեան
ի գոգն Աբրահամու բղխեալ ընկալար. լուր մեզ եւ
ողորմեա Քրիստոս Աստուած։ Լուսաւորեա զաչս սըր-
տից տանել մեզ ողորմութեամբ քո Տէր զողորմու-
թիւն. զի մի ընդ մեծատանն հայցեսցուք ի բոց հնոցին
ծագի մատին ջուր ի զովացումն. լուր։

Որ ըզլոյս աստուածային քո բանի. ծագեցեր յաշ-
խարհամած խաւարն անգիտութեան. լուսաւորեա
եւ զմեզ Հօր իմաստութիւն։ Որ զհամօրէն դատաս-
տանի օրինակ. նշանակեցեր առ մեծատունն և Ղա-
զարու. ներհակաբար տալով զոր աստ ընկալան։

Digitized by Google

վասն որոյ աղաչեսցուք զքեզ Տէր. փրկել զմեզ ի հրոյ մեղաց և տանջանաց. հանգուցանել ի գոգ Նահապետին արդարոց: Որով եւ մեք ընդ հրեշտակացն դասուց. անպատմանելի սուրբ Երրորդութեանդ. համաձայնեալ երգեսցուք զփառս ի բարձունս:

Զանսկիզբն Աստուած զՀայրն ամենակալ. բարեբանեցէք ընդ զուարթունս երկնից: Զոր ի Հօրէ ծնեալ զՈրդին միածին. բարեբանեցէք հրեշտակային ձայնիւ: Եւ զնորոգիչ սուրբ զՀոգին ձայնիւ ցնծութեամբ. բարեբանեցէք անլռելի ձայնիւ:

Անսկիզբն Աստուած և Թագաւոր երկնաւոր. բարեբանեալ ի զօրաց անմարմնոց երկնաւորաց. զքեզ օրհնեմք Հայր անսկիզբն: Խոնարհեցար ի բարձանց վասն մերոյ փրկութեան արձակիչ կապելոց եւ բժիշկ հոգւոց մերոց. զքեզ գովեմք Որդի միածին: Որ էակիցդ ես ընդ Հօր և փառակից միածնին բաշխող պարգեւաց եւ տուող ողորմութեան. զքեզ բարեբանեմք սուրբ Հոգիդ ճշմարիտ:

Մտ. Աստուածատունկ խնկաբեր ծառ յանուշահոտ բուրաստանէն որ ի գնացս Հոգւոյն վտակաց տնկեցար. եւ զանմահութեան պտուղն ի ժամու ետուր մեզ. վասն որոյ ամենեքեան զքեզ միշտ մեծացուցանեմք: Զանապական բողբոջն. յԱստուածային դրախտէն յորովայն քո տնկեալ բղխեցեր յարմատոյն Յեսսեայ ծաղիկ վայելչութեան կուսական ծննդեամբ. վասն: Յարփւոյն լուսոյ ծագումն ի քեզ վառեաց զճրագ մարմնոյն լոյս աշխարհի որով զտգեղացեալ զպատկերն իւրական զոր վերստին նորոգեաց յառաջին կերպարանն. վասն որոյ բարեխօսեա նորոգել զմեզ ի հնութենէ մեղաց:

ԽԶ. Ով քառաթեւ լուսածին զերամպանծ նիշ կառուցող կենացն ամենից. միշտ բազկատարած առ քեզ էն։ Քառակուսի ազանց հովանի եւ պաշտպան ի յերկս եւ ի մեւտս. փրկութիւն ի յայսոց եւ պարգեւ ամրութեան։ — Փառք Հօր։ Դրոշմ ընդգայութեան եւ կնիք ի դէմս ամենից. դու եւ յաստուածայինսըն կատարիս խորհուրդ. յորմէ արեգակնային փայլեն ճառագայթք։

— Այժմ եւ միշտ։ Աղբիւր կենաց բղխեալ յԵդեմայ սուրբ Աստուածածին. որով արբեցաւ երկիր ծարաւուտ հոգւոյն իմաստիւք. տուր մեզ մաղթեամ աղբերս արտասուաց. մաքրել զմեզ ի մեղաց մերոց։

---

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

### ՀԱՐՑ ԲԿ

Որ զտիրականըդ կերպարան ըզգեցուցեր ծառային. եւ զարդարեալ փառօք եղեալ ի դրախտին. || օրհնեալ ես Տէր Աստուած հարցն մերոց։ Որ ճաշակմամբ պտղոյն մահու յանմահից կենաց մեռաք. իսկ գալըստեամբ քո վերստին փակեալ դրախտին դուռըն բացաւ. օրհնեալ։ Որ փոխանակ մահաբերին որով անէծքըն տըրտմագին. մեզ փայտ կենաց ետուր զխաչ քո լուծեր նովաւ ըզկապ մահու. օրհնեալ։

Գ. ԸզՏէր օրհնեցէք եւ || բարձր արարէք ըզնա յաւիտեան։ Որ ապրեցոյց զՆոյ տապանաւըն պահելով հայր աշխարհի. եւ զհեղեղ մեղաց մարդկան հեղեղաւ ջրոց դադարեցոյց. եւ բարձր։ Որ ի ծով այս աշխարհի շինեաց տապան զեկեղեցի. եւ ի սմա զօժանդակեալ հոգիս փրկեաց ի ջրոց մեղաց եւ բարձր։

Digitized by Google

զթշնամիս ձեր, բարի արարէք ատելեաց ձերոց: Օրհնեցէ՛ք զանիծիչս ձեր. աղօթս արարէք ի վերայ նեղչաց ձերոց: Որ հարկանէ զծնօտ քո՝ մատո՛ նմա և զմիւսն, և որ հանէ ի քէն զբաճկոն քո՝ մի՛ արգելուր ի նմանէ և զշապիկս: Ամենայնի՝ որ խնդրէ ի քէն՝ տո՛ւր, և զոր ինչ հանէ ոք ի քէն՝ մի՛ պահանջեր: Եւ որպէս կամիք թէ արասցեն ձեզ մարդիկ, այնպէս արասջի՛ք և դուք նոցա: Եւ եթէ սիրէք դուք զսիրելիս ձեր՝ զի՞նչ շնորհ է ձեր. զի և մեղաւորք սիրեն զսիրելիս իւրեանց: Եւ եթէ բարի առնէք բարերարաց ձերոց՝ ո՞ր շնորհ է ձեր. զի և մեղաւորք զնոյն գործեն: Եւ եթէ տայք փոխ այնոցիկ՝ յորոց ակն ունիցիք առնուլ՝ ո՞ր շնորհ է ձեր. քանզի և մեղաւորք մեղաւորաց փոխ տան, զի առցեն անդրէն զկշիռն: Բայց սիրեցէք զթշնամիս ձեր, և բարի արարէք ատելեաց ձերոց. և տո՛ւք փոխ՝ ուստի ոչ ակն ունիցիք առնուլ. և եղիցին վարձք ձեր բազում, և եղիջիք որդիք բարձրելոյ. զի նա քաղցր է ի վերայ չարաց և ապաշնորհաց: Եղերո՛ւք գթածք՝ որպէս և Հայրն ձեր գթած է: Մի՛ դատիք՝ և ոչ դատիցիք. մի՛ պատժէք՝ և ոչ պատժիցիք. արձակեցէ՛ք և արձակիցիք: Տո՛ւք և տացի ձեզ. չափ բարւոք՝ թաթաղուն շարժուն զեղուն՝ տացեն ի գոգս ձեր. նովին չափով որով չափէք՝ չափեսցի ձեզ: Ասաց և առակ մի առ նոսա. միթէ կարիցէ՞ կոյր կուրի առաջնորդել, ո՞չ ապաքէն երկոքին ի խորխորատ անկանիցին: Ոչ է աշակերտ լաւ քան զվարդապետ իւր. ամենայն կատարեալն եղիցի իբրև զվարդապետ իւր: Զի՞ տեսանես զշիւղ յական եղբօր քո, և ի քում ական զգերանդ ոչ նշմարես: Կամ զիա՞րդ կարես ասել ցեղբայր քո. եղբայր՝ թո՛ղ հանից զշիւղդ յականէ քումմէ, և դու ի քում ական զգերանդ ոչ տեսանես. կեղծաւո՛ր՝ հա՛ն նախ զգերանդ յականէ քումմէ, և ապա հայեսջի՛ր հանել զշիւղ յականէ եղբօր քո: Զի ոչ է ծառ բարի՝ որ առնէ պտուղ չար, և ոչ դարձեալ ծառ չար՝ որ առնէ պտուղ բարի. զի իւրաքանչիւր ծառ ի պտղոյ իւրմէ ճանաչի: Զի ոչ եթէ ի փշոց քաղեն թուզ, և ոչ ի մորենւոյ կթեն խաղող: Մարդ բարի՝ ի բարի գանձուց սրտի իւրոյ բղխէ զբարի, և մարդ չար՝ ի չարէն բղխէ զչար. քանզի ի յաւելուածոյ սրտին խօսի բերան նորա: Զի՞ կոչէք զիս՝ Տէ՛ր Տէր, և զոր ասեմն ոչ առնէք: Ամե-

Digitized by Google

նայն որ գայ առ իս, և լսէ զբանս իմ՝ և առնէ զնո֊սա, ցուցից ձեզ ում նման է։ Նման է առն, որ շինիցէ տուն. որ փորեաց և խորեաց, և եդ հիմն ի վերայ վի֊մի. ի յառնել հեղեղաց՝ բախեաց գետ զտունն, և ոչ կարաց շարժել զնա. զի հաստատեալ էր հիմն ի վերայ վիմի։ Իսկ որ լսէ զբանս իմ՝ և ոչ առնէ, նման է առն՝ որ շինիցէ տուն ի վերայ հողոյ առանց հիման. զոր բա֊խեաց գետ, և վաղվաղակի անկաւ. և եղև կործանումն տանն այնորիկ մեծ։ 49։

---

ՑԵՐԵԿՈՑԻ ՀԱՄԲ. ԳԿ. Լոյս ի լուսոյ։ 219։

---

# Գ․ ԵՐԿՈՒՇԱԲԱԹԻ․ ԴՋ

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԲՋ

ՕՐՀՆԵԱԼ ՏԷՐ ‖ Աստուած հարցն մերոց։ Որ իջեր ի մէջ հնոցին և փրկեցեր զերիս մանկունսն. ընդ քեզ օրհնեմք անդադար. Աստուած։ Մէանձնականն սուրբ Երրորդութիւն որ յամենայնի ես բարեբանեալ ընկալ ըզմեր օրհներգութիւնս Աստուած։

Գ. Ըզ Տէր օրհնեցէք և ‖ բարձր արարէք ըզնա յա֊ւիտեան։ Ամենայն ժողովուրդք միաբան երգով բա֊րեբանեցէք և բարձր։ Ընդ նըստեալն ի վերայ քե֊րովբէից. քահանայք յք նուաստեալ բարեբանեցէք և բարձր։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԲՋ

Սուրբ և Աստուածածին Մարիամ ցանկալի կուսից և պարծանք ազգի մարդկան. ‖ մայր և աղախին մեծացուցանեմք։ Անկէզ մորենի և տաճար ընդհանուր լուսոյն. անարատ և անխախտելի կուսութիւն. մայր և աղախին մեծացուցանեմք։ Խորհուրդ կենաց և մայր կենդանութեան և առագաստ հրափայլ ծագմամբ մայր։

ՈՂՈՐՄԵԱ ԲՁ

Դարձո զցասումն քո ի մէնջ յաղաղակել հողեղինացս . բազմագութ Տէր խնայեա և մի կորուսաներ ։ Կանխեա զանկեալս ի գլորմանէ զվիրաւորեալս ի թըշնամւոյն . որ բըժիշկդ ես հիւանդաց բըժըշկեա զիմ զհիւանդութիւնս ։ Ի յանցանաց իմոց թախծեալ անձն իմ գոչեմ որպէս ըզմաքսաւորն . Աստուած քաւեա զիս ըզմեղաւորս ։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԲՁ

Որ ի վերդ ես քան զամենայն ըզմիտս և զխորհուրդս . || փառաց թագաւոր խնայեա ի մեզ ։ Որ միայն ունիս զանմահութիւն եւ զանեղութիւն . փառաց ։ Որ նըստիս ի քրովբէս երրորդութիւն անբաժանելի . փառաց ։ Որ երկրպագեալդ ես ի հրեշտակաց եւ ի մարդկանէ . փառաց ։

---

# Գ. ԵՐԵՔՇԱԲԱԹԻ. ԴԿ

## ՑԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԲՁ

Ողիղ են ճանապարհք քո յամենայնի արդար . || Տէր Աստուած հարցն մերոց ։ Ըզբանաւոր պատարագս յանձանց խոնարհաց ընկալ . Տէր ։ Ի տաճարի սրբութեան փառաւորութիւն մատուցանեմք քեզ Տէր ։

Գ. ԸզՏէր օրհնեցէք եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան ։ Տիւք և գիշերք ըզՏէր օրհնեցէք եւ առաւելեալ || բարձր արարէք ըզըզնա յաւիտեան ։ Իսրայէլ ըզՏէր օրհնեսցէ . Քահանայք անդադար բարեբանեցէք զանքննելի և զյայտնի աստուածութիւնն և առաւելեալ բարձր ։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԲՁ

Ըզկուսութիւնըդ քո Աստուածածին անարատ. զոր ոչ բոցակիզեաց հուր աստուածութեան նորին մեծացուցանեմք։ Որ յարգանդի քում անապականաբար բնակեցաւ. Քրիստոս Աստուած եւ փրկիչ. անձանց մերոց մեծացուցանեմք։ Անհասանելի տէրունական յայտնութիւնն աշխարհի ծագեցաւ. անմատոյց լուսոյն երկրպագեսցուք։

ՈՂՈՐՄԵԱ ԲՁ

Մեղաք մինչեւ յերկինս եւ զարդար ըզցասումն քո շարժեցաք ի մեզ. Տէր ըստ մեծի քում ողորմութեանդ ողորմեա մեզ։ Իջաք մինչ ի դժոխս ընկղմեալք յանօրէնութեան մերում. Տէր յիշեա ըզգինս արեան Որդւոյ քո եւ ողորմեա։ Հալածեա ի մէնջ Տէր նշանաւ խաչի քո. զընդդիմամարտ եւ զաներեւոյթ զազանն. եւ մի տար յապականութիւն զքո ժառանգութիւնս։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԲՁ

ՙՀընչմամբ փողոյ. սաղմոսարանաւ եւ քնարիւ. օրհնեցէք ըզՏէրն ի յերկինս։ ՙՈրդիք Սիովնի. ցընծութեամբ եւ ուրախութեամբ. գովեցէք զՈրդին միածին։ ՙԵւ սուրբ զՀոգին. ամենայն շունչք բարեբանեցէք. երգով եւ ձայնիւ ցընծութեամբ։

---

# Գ. ՉՈՐԵՔՇԱԲԱԹԻ. ԱՁ

## ՑԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԲԿ

Որ հարցըն մերոց Աստուած փառաւորեալ յաւիտեան։ Արարչակից Հօր Որդիդ միածին. կենդանարար Տէր եւ լոյս աշխարհի։ Ըստ ողորմութեան քում կեցո զմեզ Փրկիչ. եւ սուրբ զանուն քո փառաւորեսցուք։

Digitized by Google

Գ. ԸզՏէր օրհնեցէք և բարձր արարէք զնա յաւիտեան։ Տիւք և գիշերք զՏէր օրհնեցէք եւ առաւել բարձր։ Իսրայէլ զՏէր օրհնեսցէ զթագաւորն ամենեցուն. ամենայն ժողովուրդք օրհնեցէք եւ առաւելցիլ բարձր։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԲԿ

Ոգին լուսոյ և անմեղ հովանի սուրբ կոյս որ ցողեցեր ի մեզ լցցողն երկնային. զքեզ բարեբանեմք Աստուածածին կոյս։ Անկէզ մորենի եւ սրովբէ հողեղէն սուրբ կոյս. քանզի պտուղըն կենաց ի քէն տնկաւ մեզ. զքեզ։ Անթիծ լուծիչ և քաւիչ մեղաց սուրբ կոյս. որ զանտանելին յղեցեր ի գիրկըս քո բարձեր. զքեզ։

ՈՂՈՐՄԵԱ ԲԿ

Թէպէտ եւ Ողորմեա ինձ Աստուած իմ ողորմեա ինձ. զի անպատասխանի եմ յամենայնի թող ինձ Տէր։ Տնռամպեալ ծննդապարհըք քո ուղիղ են. ես միայն մոլորեցայ դարձո զիս եւ ողորմեա ինձ Աստուած։ Թեւն քո Դատաստանըք քո արդար են. ես միայն եմ մեղուցեալ քաւեա զիս և ողորմեա ինձ Աստուած։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԲԿ

Յորժամ գայցես բազում հրեշտակօք. Տէր ի դատել զերկիր։ Յայնժամ շարժին զօրութիւնք երկնից. Տէր ի յահէ քումմէ։ Եւ յայնժամ աւուր լեր իմ օգնական. Տէր իմ և Աստուած իմ։

---

# Գ. ՀԻՆԳՇԱԲԱԹԻ. ԱԿ

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԲԿ

Մանկունքըն գերեալք ի մէջ հնոցին. ըզքեզ օրհնէին Աստուած հարցըն մերոց։ Խոստովանիմ Աբրա-

համբու զոր խոստացար Աստուած. առաքեա և փրկեա զապաւինեալքս ի քեզ Աստուած: Ուղիղ են ճանապարհք քո Աստուած. մեղուցեալ յանցաւորացս ողորմութիւն շնորհեա Աստուած:

Գ. Ըզտէր օրհնեցէք եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան: Տիւք և գիշերք ըզՏէր օրհնեցէք եւ բարձր: Իսրայէլ ըզՏէր օրհնեսցէ. եւ բարձր արարէք:

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԲԿ

Որ ողորմեցար ի մեղս ծնեալ մարդկան Հայր երկնաւոր ըստ մարգարէին. եւ ետուր բնութեանս այսօր պարգեւ ըզկոյսըն սուրբ ըզծնօղ Որդւոյդ միածնի. մաղթանօք սորա Տէր մեզ ողորմեա: Որ ցօղեցեր ի մեզ յանմպոյ օրհնեալ Որդեդ այսօր զկոյսըն Մարիամ. յորմէ ծընար մարմնով եւ բարձեր նովաւ ըզմեղս նախամարդին Ադամայ. մաղթանօք: Որ մաքրեցեր Հոգւովդ սուրբ ըզսիրտ եւ զարգանդ մօր քո փառակցին. այսօր ամուլ ծնողաց նորին ետուր ըզմայր Բանին զօրհնիչն Եւայի. մաղթանօք:

ՈՂՈՐՄԵԱ ԲԿ

Յոյս իմ ես դու Տէր քաւիչ յանցանաց իմոց. մի անտես առներ զբըղխումն արտասուաց իմոց ողորմեա ինձ Աստուած: Առ քեզ ապաւինեցայ որպէս զանառակ որդին. Հայր մեղայ յերկինս և առաջի քո ողորմեա: Փրկեա զիս Աստուած ի բազում մեղաց իմոց. արա ինձ արժանի. քոյին սուրբ արքայութեանդ ողորմեա:

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԲԿ

Ընդ առաւօտս կանխեցից յանդիման լինել քեզ. Թագաւոր իմ և Աստուած իմ: Ընդ առաւօտս լը-

ւիցես ձայնի իմում. Տէր ‖ Թագաւոր իմ և Աստուած իմ։ Ես ըզքեզ աղաչեմ Տէր նայեա յաղօթս իմ. Թագաւոր։

---

# Գ · ՈՒՐԲԱԹ · ԲՋ

## ՑԱՌԱՒՕՏՈՒ

### ՀԱՐՑ ԲԿ. ՄՏ

Անուն քո յաւիտեան. Աստուած հզօր Թագաւոր աննման. արարիչ յաւիտենից ‖ Աստուած հարցըն մերոց։ Որ զերիս մանկունսն փրկեցեր ի հնոցին. փրկեա ըզմեզ ի հրոյն յաւիտենից. Աստուած։ Ապաւինելոցս ի քեզ օգնական լեր Տէր. զի դու միայն ես մարդասէր Աստուած։

Գ. Գործըք Տեառն ըզՏէր օրհնեցէք և ‖ բարձր արարէք ըզնա յաւիտեան։ Գիշերք ըզՏէ[illegible] օրհնեն[illegible]ցէք և բարձր։ Խորայքն ըզՏէր օրհնեսցէ և բարձր արարէք ըզնա յաւիտեան ալէլուիա ալէլուիա։

### ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԲԿ

Ըզքեզ Աստուածածին որ վերօրհնեալս ի զօրաց հրեշտակաց. ‖ ազգ մարդկան կենդանեաց մեծացուցանեմք։ Ըզքեզ բնակ հրեղէն աստուածութեանն յիմանալի զօրացն երանեալ. ազգ։ Ըզքեզ մայր Էմմանուէլի մարգարէին յառաջ գուշակեալ. ազգ։

### ՈՂՈՐՄԵԱ ԲԿ

Ա. Եկեսցէ Տէր ի վերայ մեր ողորմութիւն քո և բան փրկութեան քո. պահեսցէ զանձինս մեր ի մեղաց։ Ողորմութիւն քո և ճշմարտութիւն քո և լոյս երեսաց քոց. առաջնորդեսցէ մեզ ի յարդարութիւն։ Որ ողորմածդ ես գթած և երկայնամիտ Տէր

ընկալ զաղաչանս մեր. բարեխօսութեամբ սուրբ Աստուածածնին:

Բ. Տէր ըզլուր միւսանգամ քո զալըստեանն լուայ և խոկեցայ. զի ուսայ ի սրբոց պատուիրանաց եթէ գաս դու ի դատել զերկիր: Տէր յիշեցի ըզչար ըզգործս իմ և զարհուրեցայ. զի ծանեայ ճըշմարտութեամբ զահաւոր և զանաչառ ըզքո դատաստանն: Տէր յիշեցի և ըզգութ արարչական սիրոյ քո առ քո արարածս. և ի քո գըթութիւնդ ապաւինեալ աղաչեմ ողորմեա ինձ յաւուր յայնմիկ Քրիստոս արդար դատաւոր:

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԲԿ

Ա. Որ օրհնիս ի հրեշտակաց անդադար. Հայր երկնաւոր ընկալ զաղաչանս մեր: Առաջի քո անկանիմք փըրկիչ. խընդրեմք զթողութիւն բազում յանցանաց մերոց: Որ գիտակդ ես զաղտնեաց մարդկան հոգիդ սուրբ. Տէր և կենդանարար ընկալ զաղաչանս մեր:

Բ. Օրհնեցէք ըզՏէր ընդ երկնայինսըն նըմանեալ զուարթուց. նոր ժողովուրդք ասելով. քեզ Հօր տըւողիդ մեզ ըզկեանըս փառք: Երգեցէք Տեառն երգ նոր եկեղեցիք ընտրելոց որդիք Սիոնի ասելով. քեզ Որդւոյ շնորհողիդ մեզ: Բարեբանեցէք զԱստուած ի սքանչելիս սըրբութեան նորա ձայնիւ ցընծութեամբ ասելով. քեզ Հոգւոյդ պարգեւողիդ մեզ:

---

# Գ. ՇԱԲԱԹ. ԲԿ

## Ս. Յովհաննու Երուսաղեմայ հայրապետին:

### Ի ԳԻՇԵՐԻ

ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԲԿ

ՇՆՈՐՀԵԱ մեզ Քրիստոս թագաւոր. կատարել ի հաճոյս քո զյիշատակ սըրբոցն և օրհնել զանուն քո

սուրբ։ Որք հեղման քո սուրբ արեան. և չարչարա-
նաց քոց եղեն հաղորդ սուրբ վկայքն և լուսաւո-
րիչք աշխարհի։ Որոց միշտ աղաչեմք և փառաւորեմք
անդադար. երգով օրհնութեամբ սուրբ զԵրրորդու-
թիւնդ համագոյ։

Միաբան ամենեքեան զԱստուած աստուածոց օրհ-
նեցէք || ձայնիւ սրբասացութեամբ ըզպսակիչն սըր-
բոց։ Զթագաւորըն փառաց Քրիստոս զէակից Հօր և
Հոգւոյն. գովեցէք ձայնիւ։ Զբաշխողըն պարգևաց
սուրբ զՀոգին ճշմարտութեան. բարեբանեցէք ձայնիւ։

Այսօր տօնեմք ըզտօն սրբոց վկայիցն. որ ա-
րեամբ նահատակեալ. || փոխեցան ի զօրս վերին
զուարթնոցն։ Արիաբար մարտեան ընդդէմ խոր-
թագաւորաց. զյաղթողական ընկալեալ ըզպսակս.
փոխեցան։ Եղեն օթևանք սուրբ Երրորդութեանն.
զանճառական ընկալեալ ըզկեանս. և բարեխօսեն
առ Տէր վասն անձանց մերոց։

Ով երանեալ սուրբ վկայք որք արժանի եղէք.
|| մարմնով և արեամբ դասակից լինել զուարթնոց երկ-
նից։ Քաղաքավարեալք ի մարմնի և հետևողք Որդւոյն
Աստուծոյ. մարմնով։ Լուսաւորեալք ի Հօրէ պայծա-
ռացեալք ի Հոգւոյն սրբոյ. բարեխօսեցէք առ Տէր
վասն անձանց մերոց։

Որ պսակիչդ ես ամենայն մարտիրոսաց. և յաղ-
թող պանծեցեր ըզյուսացեալսն ի քեզ Քրիստոս փա-
ռաց թագաւոր. || բարեխօսութեամբ սրբոց մարտի-
րոսաց. պարգևեա զխաղաղութիւնդ երկրպագուացս
ամենասուրբ Երրորդութեանդ։ Որք մատնեցին զան-
ձինս իւրեանց տանջանաց և մահու. և հեղ-
մամբ արեանն իւրեանց եղեն վկայք քո կամա-

Digitized by Google

ւոր միածնին. բարեխօսութեամբ։ Որք ըղձական կամապաշտութեանցըն վանեցին յաշխարհէ. եւ ենթադրեալ կործանեցին ըզբելիար պատերազմեալք ի հանդիսի. բարեխօսութեամբ։

Հրաշափառ ճըգնութեամբ պատերազմեալք ընդդէմ թըշնամւոյն. եւ արիաբար վառեալք զինու սուրբ Հոգւոյն յաղթեցէք անօրինացն ‖ Ո՛վ սուրբ վկայք ըզձեզ ունիմք բարեխօս առ Տէր վասն անձանց մերոց։ Անտանելի չարչարանացն եղէք վկայք ճըշմարտութեան. եւ խաչակիցք եղէք Որդւոյն Աստուծոյ. ըզբաժակ մահու արբէք ուրախութեամբ. Ո՛վ։ Յաղթական համբերութեամբ կատարեցէք զընթացըս ձեր. եւ փոխեցայք յերկրայնոցս ի յերկինս. ընկալայք ի Քրիստոսէ ըզպսակս անապական. Ո՛վ։

ՄՐԳ. Ապաշխարութեամբ ապրեցաւ քաղաքըն Նինուէացւոց. ‖ Ի լըսել ձայնի մարգարէին եղեւ թողութիւն մեղաց։ Եհաս բանն առ թագաւորն. պատուէր տայր ժողովըրդեանն. լըսել։ Ի բերանոց մանկանց տըղայոց. զարքայն երկնից յօգնութիւն կոչէին. լըսել։

ՀԱՅՐ. Որ ըզլոյս անճառ շնորհաց աստուածային քո գիտութեանդ. ծագեցեր յաշխարհս հայաստանեայց. զըթած Հայր երկնաւոր զըթա ի մեղուցեալքս։ Որ ընտրեցեր յորովայնէ զմաքրեալն Հոգւով սուրբըն Ներսէս. ժառանգել զվիճակ հայրենի հովուել արդարութեամբ եւ իրաւամբք։ Որ օրինօք ճըշմարտութեանըն զարդարեաց զեկեղեցի. կարգաւորեալ բարեպաշտութեամբ. սորին աղաչանօք խնայեա ի մեզ Քրիստոս։

ՄԾ. Սիոն լուսոյ և ամպ հովանի սուրբ կոյս որ ցօ-

Digitized by Google

զեղցեր ի մեզ ըղձօղն երկնայինն. || զքեզ բարեբանեմք Աստուածածին կոյս։ Անկէզ մորենի եւ արմատ Հողեղէն անուրբ կոյս. քանզի պտուղն կենաց ի քէն տրուաւ մեզ. զքեզ։ Անիծից լուծիչ և քակիչ մեղաց անուրբ կոյս. որ զանտանելին յէից ի գիրկըս քո բարձեր. զքեզ։

ԽՁ. Ի վերայ վիմի հաւատոյ շինեցեր ըզքո սուրբ զեկեղեցի. ըզդա պահեա ի խաղաղութեան։ Որ շնորհեցեր ողորմութիւն ի բնակարանս հրեշտակաց եւ մարդկան քաւարան. տուր որ միշտ զանչափ քո զխաղաղութիւն։ — Փառք Հօր։ Ի տաճարի փառաց սրբութեան քո քեզ երգեն մանկունք. տուր ազգազառատ քո զողորմութիւն։

— Այժմ և միշտ։ Արդ եկայք հաւատացեալք կատարեսցուք ըզյիշատակ սրբոց վկայիցն. զի ի ձեռամբն սոցա բացցի մեզ դուռն ողորմութեան. ասելով միշտ բարեխօսութեամբ Տէր վասն անձանց մերոց։

---

ՑԱՌԱՒՕՏՈՒ ՀԱՐՑ ԳՁ. Որ զանչափ քո։ 92։
ՄԱՆԿՈՒՆՔ ԳՁ. Մանկունք նոր Սիոնի փառաբա։ 218։
ՑԵՐԵԿՈՑԻ ՀԱՄԲ. ԳՁ. Որ արարեր։ Տէր է Հայր։

---

# Դ. ԿԻՒՐԱԿԷ. ԳՁ
## ՔԱՌԱՍՆՈՐԴԱՑ

---

### Ի ԳԻՇԵՐԻ
### ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԳՁ

Որ արարեր զօրութեամբ զիմանալեացն աշխարհ վերին. եւ ի նմա հաստատեցեր տնտես ըզպետս հրեղինացն. || օրհնեմք զանհասանելի զօրութիւնդ։ Որ տիրապէս մեծատունդ ստեղծեր երկրորդ աշխարհ

զգայլի․ և ի դրախտն որ յադենի տընկեաց եդեալ
զմարդն առաջին․ օրհնեմ ծմք։ Որ շինեցեր բարձրագոյն
զեկեղեցի քո խորհրդեամբ․ և ի սմա կարգեալ տըն-
տես զքահանայս բանին ճշմարտութեան․ օրհնեմ ծմք։
Անտանելւոյն տագաւոր բարձրոյ էիցըս բարձրելին․
որ ծընար զԱստուած մարմնով զանմարմնաբար ծընօղն-
դըն Հօր․ բարեխօսեա վասըն մեր Աստուածածին Մա-
րիամ։

† Որ տիրականս առ ի քէն կարգեալ տընտես բնու-
թեան մերոյ․ իմաստութեամբ ընդպարտիս եթող քոյոց
պարտապանաց․ թող և ըզմեր ընդյանցանս || ողորմու-
թեամբըդ քո Քրիստոս։ Որ զպատմուճան նորա առաջին
զոր զգեցուցեր օծմամբ Հոգւոյն․ մերկացաք մեղօք ըստ
նախահօրըն պատրանաց․ զգեցո ըզնոյն վերըստին ողոր։
Զաստուածային կայծակունսն ի սրովբէիցն անհըպե-
լին․ անմաքրապէս մերձեցաք զօլ պարտապան քում
խորհըրդոյն․ շնորհեա ըզնոյն մաքրութեամբ ի թողու-
թիւն մեղաց մերոց։

ՎԱՐ․ Այսօր որ էն ի յերկինս Բան և ծընունդ
Հօր միածին․ ըզծածկեալն ի յէից խորհուրդ յայտնեաց
աշակերտացն․ ծառայի ըզկերպարանըն ծածկելով աս-
տուածութեանըն։ Այսօր հընչեաց յառաքելոյըն հայ-
րական բարբառ յերկնից․ ասէ դա է Որդի իմ սիրելի
ընդ որ հաճեցայ․ որ ըզբնութիւնն աստուածային կեր-
պիւ ծածկեալ ծառայական։ Այսօր վիմին հաւատոյ
յայտնեալ զխորհուրդ Երրորդութեանն․ երրակի յօրին-
մամբ տաղաւարացըն խորհրդոյ․ որով ըզմեզ մաքրեա-
ցես լինել տաճար Երրորդութեանն։

Որ յանարուեստ ի յաթոռ բազմեալ ընդ Հօր և ընդ
Հոգւոյն․ անըսկիզբըն Աստըւած Բանդ ի Հօրէ առաքե-

Digitized by Google

ցայր. ծառայի զգեցար ըզկերպարան ծածկելով զաստուածութիւնդ։ Այսօր ցուցեր ի Թաբոր զանստանելի լուսոյդ փայլումն. ծագեցար աշխարհի արդարութեան արեգակն. յայտնելով աշակերտացն ըզպայծառագրեալ աստուածութիւնդ։ Յորում ահիւ զարհուրեալ ընտրեալ դասուց առաքելոցն. երրակի խորհրդով յօրինէին քեզ տաղաւար. որով ըզմեզ սըրբեսցես լինել տաճար քեզ հոգեւոր։

ԱԳ. Ըզհայրն երկնաւոր. օրհնեցէք ընդ հըրեշտակս որ միայն է Թագաւոր փառաց։ Զորդին միածին. գոհութեամբ բարեբանեցէք որ եկն եւ փրկեաց ըզմեզ։ Զմխիթարիչ սուրբ զհոգին. ամենայն շունչ բարեբանեցէք որ լուսաւորեացն ըզմեզ։

Օրհնեմք ըզքեզ անըսկիզբն Աստուած ընդ հրեշտակս քո ի յերկինս։ Զօրհանապազ օրհնեսցուք զմիայն օրհնեալ Թագաւորդ. զի դու միայն ես փառաւորեալ Տէր յարարածոց քոց։ Ըստ արժանի սըրբութեան քում հանապազ քեզ վայելէ օրհնութիւն. զի դու միայն ես փառաւորեալ փառօք քո Աստուած։

Օրհնեմք ըզքեզ Աստուած ընդ սուրբս քո ի յերկինս։ Տուր մեզ իմաստութիւն փառաւորել ըզքեզ ի տուէ եւ ի գիշերի. ընդ հրեշտակս քո ի յերկինս։ Լուր ձայնի աղօթից ժողովրդեան քո. եւ լեր մեր ապաւէն. պահելով ի խաղաղութեան։

Առաւօտ խաղաղութեան. ծագեաւ ի մեզ մարդասէր եւ կեցո։ Իմանալի լուսովդ քո Փրկիչ. լուսաւորեա ըզմեր ըզհոգիս եւ կեցո։ Եւ յամենայն ի վըտանգէ ամրացո ըզմեզ. ընդ հովանեաւ աջովդ քո սրբոյ եւ կեցո։

ՄԾ. Ամէնիմաստ ամենից Հայր բազմագէտ. խնա-

մօղ ստեղծօղ եւ Տէր բոլորից. անեղ եւ էից էակ գո՛ր միշտ օրհնեն. դասք անմարմնականացըն յաւէժաւոր հընչմամբ։ Որ կերպարան և կնիք Հօր առեալ վասըն մեր ծառայի կերպ ի կուսէն. որ էն ի յաթոռ փառաց անտես վերնոցն. ի յայրին իջեալ նի եւ ի մըսուր յանբանից բազմեալ։ Զի կուսէն մարմնացեալ Բանն եկայք ժողովուրդք ընդ հովւսըն բարեբանեսցուք եւ ընդ մոգուցն երկըրպագեսցուք ընդ երկնային զօրսն երգեսցուք փառք ի բարձունս Աստուծոյ։

ԽԶ. Զըրս ըստ պատկերի քում ըստեղծեր. նորոգելով քեզ տաճարացուցեր. զնորոգեալս ի մէնջ ըզտաճաՁՁւՁ: մւՁ: Ճմմ: Ճրս ընկալ քեզ ի բնակութիւն։ Որ չորրհես մեզ կենաց տըւող. զկենդանագիր քո ծառայական կերպի. բերելով ըզբոլորից ըզվերբերոՁՁւՁ: մւՁ: Ճմմ: Ճղդ ի փառըս սուրբ Երրորդութեանդ։ Կեցո զորդի ծառայի քո. զոր ի Հաւուման գանձիցըն վերապատուեցեր. ուր եդին ըզվէմըն հաւատոՁՁւՁ: մւՁ: Ճմմ: Ճյ հիման սուրբ եկեղեցւոյ։ — Փառք Հօր։ Որ ըզվերջինըս զայս հրաշագործեցեր. քեւ չափ բնակցութեամբ ընդ հիմընափայլեցեր. զպանծալի և ըզփայլեալ ըզփառըս տանս աՁՁւՁ: մւՁ: Ճմմ: Ճյս վերջինըս քան զառաջինն։

— Այժմ և միշտ։ Որ վառեցար ի յարփւոյն եւ ոչ կիզար ըստ մորենւոյն. այլ եւ տուր զհացըն կենաց կերակուր բանաւորաց. բարեխօսեա առ Քրիստոս ջընջել ըզգիր մեղաց մերոց։

---

## ՅԱՐԱՒՕՏՈՒ

### ՀԱՐՑ ԳԿ

Արարչակից ըդ Հօր. համագոյ Հոգւոյդ Որդի եւ Բան. որ ըզխորհուրդ տնօրէնութեանըդ քո ծանուցեր

Digitized by Google

տեսանողացն. || Ընդ քեզ ծնընիմք Աստուածահայրցըն մերոց ։ Ո՞ր զփրկական քո օր. զանմոռաց պատարագին զենումն. ցանկացաւ տեսանել Աբրահամ ետես Սահակաւ եւ ցնծացաւ. Ընդ քեզ ։ Ո՞ր զկենարար խաչ քո. գուշակէր սանդուղքըն Յակոբայ. որով հրեշտակք ի յերկիր իջեալ եւ մարդիկ յերկինս ելին. Ընդ քեզ ։

Գ. Ըզ Տէր օրհնեցէք բարձր արարէք զնա յաւիտեան ։ Նախանձաւորք ճշմարտութեան. մեծ նահատակին Յոբայ արդարոյ հօյլք ճըգնաւորաց բարձր արարէք ըզՀայրն երկնաւոր ։ Ընդ ողջախոհին Յովսեփայ. որ յաղթեաց մեղաց ցանկութեան մանկունք Սիովնիս բարձր արարէք զՔրիստոս թագաւորն ։ Ընդ օրինակին Քրիստոսի. Մելքիսեդեկի քահանայապետին դասք քահանայից բարձր արարէք զՀոգին ճշմարիտ ։

ՄՆԾԱՑՈՒՑԷ ԳԿ

Աստուածատունկ խընկաբեր ծառ յանուշահոտ բուրաստանէն որ ի գնացս հոգւոյն վերակացուն տընկեցար. եւ զանմահութեան պտուղն ի ժամու ետուր մեզ. || Վասն որոյ ամենեքեան ընդ քեզ միշտ մեծացուցանեմք ։ Զանապական բողբոջն. յաստուածային դրախտէն յորովայն քո տընկեալ բըղխեցեր յարմատոյն Յեսսեայ ծաղիկ վայելուչ կուսական ծնընդեամբ. Վասն ։ Յարփւոյն լուսոյ ծագումն ի քեզ փառեաց ըզճրագ մարմնոյն լոյս աշխարհի որով գտեալ զպատկերն իւրական զոր վերըստին նորոգեաց յառաջին կերպարանն. Վասն որոյ բարեխօսեա նորոգել ըզմեզ ի հնութենէ մեղաց ։

Իւղաբերից Աւետարան Յովհաննու ։ ԺԹ. 38 ։
Յետ այսորիկ ։ Ի. 18 ։ Ապա Զամենայն աւուրս ։

ՈՂՈՐՄԵԱ ԳԿ

Շնորհեա մեզ Տէր ընդ աղքատաց օրինակին Ղազարու ժուժկալութիւն. զի կամաւոր աղքատութեամբ արքայութեանդ երկնից ընդ նմին լիցուք արժանի. Լուր մեզ եւ ողորմեա Քրիստոս Աստուած: Որ փոխանակ հացին կարօտութեան զհացն անմահութեան նմա շնորհեցեր. եւ ընդ մեծատանն անգթութեան ի գոգն Աբրահամու զնա ընկալար. լուր մեզ եւ ողորմեա Քրիստոս Աստուած: Լուսաւորեա զաչըս սըրտից տալ մեզ ողորմութեամբ ի քէն Տէր զողորմութիւն. զի մի ընդ մեծատանըն հայցեսցուք ի բոց հնոցին ծագիւ մատին ջուր ի զովացումն. լուր:

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԳԿ

Որ ընդլայն աստուածային քո բանիւ. ծագեցեր յաշխարհ համայն խաւարն անգիտութեան. լուսաւորեա եւ զմեզ հօր իմաստութիւն: Որ զհամօրէն դատաստանին օրինակ. նշանակեցեր առ մեծատանն և Ղազարու. ներհակաբար տալով զոր աստ ընկալան: Վասն որոյ աղաչեսցուք զքեզ Տէր. փրկել զմեզ ի հրոյ մեղաց և տանջանաց. հանգչել ի գոգ նահապետին արդարոյ: Որով եւ մեք ընդ հրեշտակացըն դասուց. անբաժանելի սուրբ Երրորդութեանդ. համաձայնեալ երգեմք ըզփառս ի բարձունս:

---

Առաւօտու Սաղմոս ՃԺԲ:

ԿՑ. Եղիցի անուն: Փխ. Օրհնեցէք մանկունք:

## Օրթի

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու. ԺԲ. 32:

Տէրն մեր Յիսուս Քրիստոս ասէ

Մի՛ երկնչիր հօտ փոքրիկ. զի հաճեցաւ հայր ձեր տալ ձեզ զարքայութիւն: Վաճառեցէք զինչս ձեր, և

Digitized by Google

տուք ողորմութիւն. և արարէք ձեզ քսակս առանց հնա-
նալոյ, գանձ անպակաս յերկինս. ուր ոչ գող մերձենայ,
և ոչ ցեց ապականէ: Զի ուր գանձն ձեր է, անդ և
սիրտք ձեր եղիցին: Եղիցին գօտիք ձեր պնդեալ ընդ
մէջս. և ճրագունք լուցեալք: Եւ դուք նմանօղք մարդ-
կան, որ ակն ունիցին տեառն իւրեանց, թէ երբ դառ-
նայցէ ի հարսանեաց. զի յորժամ գայցէ և բախիցէ,
վաղվաղակի բանայցեն նմա: Երանի իցէ ծառայիցն
այնոցիկ՝ զորս եկեալ տէրն գտցէ արթունս: Ամէն ա-
սեմ ձեզ. զի գօտի ընդ մէջ ածցէ՝ և բազմեցուսցէ զնո-
սա, և անցեալ պաշտիցէ զնոսա: Եւ եթէ յերկրորդ՝
կամ յերրորդ պահու եկեսցէ՝ և գտցէ այնպէս, երանելի
են ծառայքն այնոքիկ: Բայց զայն գիտասջիք, եթէ գի-
տէր տանուտէրն յորում ժամու գող գայ, հսկէր և չտայր
թոյլ ական հատանել ի տան իւրում: Եւ դուք եղերուք
պատրաստք. զի յորում ժամու ոչ կարծիցէք, գայ որդի
մարդոյ: Ասէ Պետրոս. Տէ՛ր, առ մե՞զ ասացեր զառակդ
զայդ, եթէ առ ամենեսեան: Եւ ասէ Տէր. ո՞վ իցէ հա-
ւատարիմ տնտես և իմաստուն, զոր կացոյց տէր իւր ի
վերայ գերդաստանի իւրոյ՝ տալ ի ժամու զկերակուրս:
Երանի իցէ ծառային այնմիկ՝ զոր եկեալ տէր իւր գտա-
նիցէ արարեալ այնպէս: Արդարև ասեմ ձեզ՝ զի ի վե-
րայ ամենայն ընչից իւրոց կացուսցէ զնա: Ապա եթէ
ասիցէ ծառայն այն ի սրտի իւրում. յամէ տէր իմ ի
գալ. և սկսանիցի հարկանել զծառայսն և զաղախնայս,
ուտել և ըմպել և արբենալ: Եկեսցէ տէր ծառային
այնորիկ յաւուր՝ յորում ակն ոչ ունիցի, և ի ժամու՝ յո-
րում ոչ գիտիցէ. ընդ մէջ կտրեսցէ զնա, և զմասն նո-
րա ընդ անհաւատս դիցէ: Եւ ծառայ՝ որ գիտիցէ զկամս
տեառն իւրոյ՝ և ոչ պատրաստեսցէ ըստ կամաց նորա,
արբցէ գան բազում: Եւ որ ոչն գիտիցէ՝ և արժանի
գանի ինչ գործիցէ, արբցէ գան սակաւ: Ամենայնի՝ ո-
րում շատ տուաւ, շատ խնդրեսցի ի նմանէ. և որում
բազում աւանդեցաւ, առաւել ևս պահանջեսցեն ի նմանէ:

---

ՅԵՐԵԿՈՅԻ ՀԱՄԲ. ԳՁ. Որ տիրականս: 235:

---

# Դ· ԵՐԿՈՒՇԱԲԱԹԻ· ԳԿ

## ՑԱՌԱՒՕՏՈՒ

### ՀԱՐՑ ԳԶ

ՓԱՌԱՒՈՐԵԱԼ· անունն քո յաւիտեան ‖ Տէր Աստուած հարցն մերոց։ Վասն անուան քո մեծի. մի մատներ զմեզ իսպառ Տէր։ Բարձրացուցանեմք զովելով զանուն քո սուրբ Տէր։

Գ· Ընդ Տէր ‖ օրհնեցէք եւ բարձր արարէք զնա յաւիտեան։ Որ ի յերկրէ ի յերկինս համբարձաւ ի վերայ թեւոց հողմոց. ժողովուրդք օրհ։ Որ նստի ի բարձունս յաթոռ ընդ աջմէ բարձրելոյն. քահանայք օրհ։

### ՄՆԾԱՑՈՒՍՑԷ ԳԶ

Աստուածածին երկնային դուռն աստուածային ծնընդեան աւետարանէր հրեշտակն. ‖ ուրախ լեր բերկրեալդ Տէր ընդ քեզ։ Ի քերովբէս բազմեալ ընդ Հօր անապականաբար բնակիլ հաճեցաւ ի քում յորովայնի. ուրախ։ Որ բոցեղէն սրովբէիւք շրջանափակեալ պահիւր. այսօր ի մէջ մարդկան ի գիրկս հողեղինի յայտնեալ. ուր։

### ՈՂՈՐՄԵԱ ԳԶ

Զերծո զիս յորոգայթէ որսողին. եւ յամենայն վտանգից ապրեցո. ‖ եւ ողորմեա։ Ցանկութեամբ թշնամւոյն եւ ի գաղտնի նետից բանսարկուին պահեա. եւ ող։ Փրկեա զիս ի յանցանաց մեղաց իմոց. եւ նորոգեա զիս հոգւով գիտութեան. եւ ող։

### ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԳԶ

Ընձայրն երկնաւոր. օրհնեցէք ընդ հրեշտակս որ միայն է թագաւոր փառաց։ Զորդին միածին. գոհութեամբ բարեբանեցէք որ եկն և փրկեաց



Digitized by Google

ըզմեզ։ Զմխիթարիչ տուրք զՀոգին. ամենայն շունչք բարեբանեսցէք որ լուսաւորեացն ըզմեզ։

---

# Դ. ԵՐԵՔՇԱԲԱԹԻ. ԴՁ

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

### ՀԱՐՑ ԳՁ

Փառաւորեալ է անուն քո յաւիտեան. ‖ Աստուած հարցն մերոց։ Վասն Աբրահամու սիրելւոյ քո. մի մերժեր ըզմեզ ի սպառ. Աստը։ Ի տաճարի քում խնդրեմք ի քէն. մի անտես առներ ըզմեզ. Ա՛։

Գ. Ըզտէր օրհնեցէք ‖ բարձր արարէք ըզնա յաւիտեան։ Որ փառաբանին յանմարմնոց հրեշտակաց. ամենայն ազինք գովելով բարձր։ Որ երկրպագին ի դասուց քերովբէից. քահանայք օրհնելով ժողովուրդք առաւել բարձր։

### ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԳՁ

Զանճառելի լուսոյ Մայր և զբնակարան։ 93։

### ՈՂՈՐՄԵԱ ԳՁ

Ծով մեղաց իմոց զիս ալէկոծէ. որ ես նաւապետ բարի. ‖ շնորհեա ինձ նաւահանգիստ Հայր ամենակալ։ Խորք պատրանաց զիս կորուսանեն. այլ դու նաւապետ բարի. շնորհեա։ Որ միայն իշխանդ ես թողուլ ըզմեղս. եւ ես աղաչեմ ըզքեզ. Տէր թող ինձ ըզմեղս իմ Հայր ամենակալ։

### ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԳՁ

Օրհնեմք ըզքեզ անըսկիզբն Աստուած ընդ հրեշտակս քո ի յերկինս։ Զօրհանապազ օրհնեսցուք զմիայն օրհնեալ Թագաւորդ. զի դու միայն ես փառաւորեալ Տէր յարարածոց քոց։ Ըստ արժանի սրբութեան քում հանապազ քեզ վայելէ օրհնութիւն. զի դու միայն ես փառաւորեալ փառք քեզ Աստուած։

# Դ․ ՉՈՐԵՔՇԱԲԱԹԻ․ ԴԿ

## ՑԱՌԱՒՕՏՈՒ

### ՀԱՐՑ ԳԶ

Հարցըն մերոց Աստուած ընդ քեզ բարեբանեմք . Որ օրհնեալ ես ի յաւիտեան ։ Վասն ուխտի հարցըն մերոց մի մերժեր ըզմեզ ի քո բազում գըթութեանցդ. որ ։ Ցահաւոր յատենին յահեղ յայնըմ աւուր . ողորմեա անձանց մերոց. որ ։

Գ. ԸզՏէր օրհնեցէք եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան ։ Եցէք Երեք մանկունքն ի հնոցին միաբանութեամբ երգելին ասելով. ամենայն գործըք Տեառն ըզՏէր օրհնեցէք ։ Եսցէ Եւ զայն տեսեալ անօրէն արքային զի ոչ այրեին մանկունքն ի հնոցին . զանհի հարեալ ասելով . եւ ես բարեբանեմ զանմահ թագաւորն ։

### ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԳԶ

Սուրբ զԱստուածածինն. օրհնութեամբ ։ 141 ։

### ՈՂՈՐՄԵԱ ԳԶ

Ողորմեա ինձ Աստուած զի քեզ միայնոյ մեղայ ։ Առաւել լըւա զիս. ի տըղմոյ յանցանաց աղբերբ բըժշկութեան. եւ ողորմեա ։ Ցարենէ փըրկեա զիս. որ հոգւոց և մարմնոյ ունիս իշխանութիւն . եւ ողորմեա ։

### ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԳԶ

Առաւօտ խաղաղութեան . ծագեա ի մեզ մարդասէր եւ կեցո ։ Իմանալի լուսովըդ քո Փըրկիչ. լուսաւորեա ըզմեր ըզհոգիս եւ կեցո ։ Եւ յամենայն ի վըտանգէ ամրացո ըզմեզ . ընդ հովանեաւ աջովըդ քո սըրբոյ եւ կեցո ։

ՑԵՐԵԿՈՑԻ Ցետ ի քէն հայցեմքն Սրբուհի. մի մի տուն ասա ըստ ժամակարգաց. է Միջերորդ Երկ. Երեք. Երկու տուն:

---

# Դ. ՀԻՆԳՇԱԲԱԹԻ. ԱՁ

## ՑԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԳՁ

ՕՐՀՆԵԱԼ ես Տէր || Աստուած հարցըն մերոց: վասն ուխտի քո առ հարսըն փըրկեալ զմեզ ի հրոյն. և ի բորբոքեալ բոցոյն ապրեցո զմեզ Աստուած: Որ նըստիս ի քրովբէս և բարեբանիս ի սերովբէից. յանձանց խոնարհեաց ընկալ ըզբանաւոր պատարագս ի մէնջ Աստուած:

Գ. Գործք Տեառն ըզՏէր || օրհնեցէք. և բարձր արարէք ըզնա յաւիտեան: Գիշերք ըզՏէր օրհնեցէք Զթագաւորն յաւիտենից զԱստուած արարիչ. օրհնեցէք և: Աղբերք ըզՏէր օրհնեցէք Զէակիցն Հօր և Հոգւոյ. զմիածին Որդին գովեցէք և բարձր: Իսրայէլ ըզՏէր օրհնեսցէ Զփառակիցն Հօր և Որդւոյ. զնորոգող սուրբ զՀոգին բարեբանեցէք և բարձր:

ՄՆԾԱՑՈՒՍՑԷ ԳՁ

Անըսկըզբնական Բանին Հօր բընակարան. տաճար և առագաստ տեղի անտանելի լուսոյն. || զքեզ ըմեծացուցանեմք արժանապէս երգով աստուածածին մայր և կոյս: Ցորմէ կենդանաստեղծեալք յանեղէն հաստեցան ամենայն եղականքս. անսերմնապէս տըղայացաւ յորովայնի քում. և ծընաւ առ ի քէն մարմնացեալ Աստուածն ը բոլորից. զքեզ: — Ցորմէ զարհուրեալ դողային դասք վերին զըւարթնոցն. տըղայապէս առընկալեալ բարձեր ի գիրկս. և ար-

Digitized by Google

բուցեր որպէս մայր լուսացողին ըզքեզ ըզկուսական քո սուրբ ըզկաթն. զքեզ :

ՈՂՈՐՄԵԱ ԳԶ

Զանապական ըզհոգեւոր ըզգանձըն. յապականացու կենցաղըս ծախեցի. || այլ առ քեզ միայն պաղատիմ բարերար Փրկիչ. խնայեա ի մեղուցեալ ծառայս : Զցանկ հոգւոյ իմոյ քակտեցի. և եղէ անբարունակ որթ. այլ : Ոստաքանց եղէ ես որպէս զարմատենի. պըտղակորոյս որպէս ձիթենի. այլ անյիշաչար եւ անոխակալ Փրկիչ խնայեա ի մեղուցեալ ծառայս :

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԳԶ

Աջովըդ քո Աստուած ընկալ զիս եւ կեցո : Յօրհնութիւն ի Նոր օրհնեսցուք ըզքեզ Քրիստոս փրկիչ մեր : Ի սրբութեան քում բարեբանեմք ըզքեզ Քրիստոս Աստուած մեր :

---

# Դ. ՈՒՐԲԱԹ. ԱԿ

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԳԿ

ԱՍՏՈՒԱԾ բարձրեալ ահաւոր. եւ սքանչելագործ արարիչ անձանց մերոց օրհնեմք ըզքեզ || Աստուած հարցըն մերոց : Որ իջեր ի մէջ հնոցին եւ փըրկեցեր մեծ ըսքանչելեօք զերիս մանկունսն. Աստուած : Քեզ հրեշտակք երկրպագանեն եւ սերովբէք սըրբասաց ձայնիւ օրհնեն ըզքեզ. Աստուած :

Գ. Գործըք Տեառն || ըզՏէր օրհնեցէք. եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան : Տիւք և գիշերք [illegible] ըզՏէր : Իսրայէլ ըզՏէր [illegible] օրհնեսցէ Ամենայն ժողովուրդք երգով օրհնութեամբ եւ բարձր :

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԳԿ

Մայր և կոյս աղախին Քրիստոսի. որ բարեխօսդ ես միշտ աշխարհի. || քեզ երանեն ամենայն ազգք: Մաքուր աղաւնի եւ հարսն երկնից Մարիամ. տաճար եւ աթոռ Աստուծոյ Բանին. քեզ: Քեւ հանեցան իմանալիքն ընդ հողեղէնքս. եւ քեւ մերձեցաք ի փայտըն կենաց. քեզ:

ՈՂՈՐՄԵԱ ԳԿ

Մաքսաւորն հառաչանօք ի տաճարին էառ ըզքաւութիւն. || Նովին ձայնիւն և ես գոչեմ ողորմեա ինձ Աստուած: Աւազակն աղաղակէր ի խաչին յիշեա զիս Տէր. Նովին: Անառակ որդին աղերսանօք աղաչէր ըզքեզ Հայր մեղայ յերկինս և առաջի քո. Նովին:

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԳԿ

Անըսկիզբն Աստուած և Թագաւոր երկնաւոր. բարեբանեալ ի զօրաց անմահից երկնաւորաց. ըզքեզ օրհնեմք Հայր անըսկիզբն: Խոնարհեցար ի բարձանց վասըն մերոյ փըրկութեան արձակիչ կապելոց եւ բըժիշկ հոգւոց մերոց. ըզքեզ գովեմք Որդիդ միածին: Որ էակիցդ ես ընդ Հօր և փառակից Միածնիդ բաշխող պարգեւաց եւ տուող ողորմութեան. ըզքեզ բարեբանեմք սուրբ Հոգիդ ճըշմարիտ:

---

# Դ· ՇԱԲԱԹ· ԲԶ

## Ս· Քառասնիցն Սեբաստիայ

### Ի ԳԻՇԵՐԻ

ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԳԿ

ԱՅՍՕՐ ընդ անմարմնոցըն դասս պարեն. որք ի Սեբաստիա ճըգնութեամբ պատերազմեալք յաղթեցին թըշնամւոյն. || բարեխօսութեամբ սոցա Քրիստոս խը-

նայեա ի մեզ։ Եւ ըզմոլութիւն անօրէն բռնաւորին. աստուածային արիութեամբ վանեալ. տարեալ ժուժկալութեամբ համբերեցին տանջանացն. բարեխօսութեամբ։ Ի ձուլել պատուական մարմնոցն ի դժընդակ օդոյն. տագնապէին ի լճին սառուցելոյ յանտանելի տանջանացն. զաչս ի յերկինս համբարձեալ եւ զօգնութիւն ի քէն խնդրէին. որ յոյս և ապաւէնդ ես քոց սըրբոց խնամեա ի մեզ։

† Այսօր զանյաղթելի մարտիրոսացն. եկեղեցի տօնէ ըզյիշատակ ճգնութեան. որք ի Սեբաստիա պատերազմեալք ընդ թշնամւոյն յաղթեցին քաջութեամբ. սոցին աղաչանօք || Քրիստոս խնամեա ի մեզ։ Այսօր անտանելի չարչարանօք. նահատակեալք ի լճին սառուցելոյ երանելի քառասունքն. որք ի բարձանց անճառելի ճառագայթիցըն նշողիւք տապացեալք լինէին. որ իջեր ի մէջ սըրբոց քոց Քրիստոս խն։

ՄՏՆ. Ով երջանիկ ճառագայթ. առաքելական քարոզութեանցն արժանաւոր լինելով սուրբ Ստեփանոս. հաստատութիւն ի Քրիստոսէ հայցեա սուրբ եկեղեցւոյ։ Որ քոյին յօժարական համբերութեամբդ ըզքարկոծումըն յանձն առեր. շնորհեալ քեզ յԱստուծոյ լինել չարչարակից Քրիստոսի. զի եւ մեզ ուսուսցես փառաւորել սուրբ զԵրրորդութիւնն։ Աղօթէիր. որ քարանձիգըն լինէին ի քեզ նախդ ի վըկայս. զի առցես ըզհատուցումըն բարի յարարչէն ամենեցուն. եւ այժմ աղաչեմք ըզքեզ եւ վասըն մեր բարեխօսեա։

ԳՐԻ. Խոստովանող Քրիստոսի ճըշմարիտ վըկայ. բազմաչարչար նահատակ տէր Գրիգորիոս. զպակասութիւն չարչարանաց Տեառն ի մարմնի քում կրեցեր. որով ցընծայ եկեղեցի ի փառս որդւոց Սիոնի։ Ծնող

հոգեւոր աստուածանման սիրով. գորովագութ հայր պարծանաց տէր Գրիգորիոս. չարչարանօք մարմնոյդ մաքրեցեր ըզմեզ ի յաղտոյ մեղաց. եւ ծընար որդիս լուսափայլ բանիւդ: Կերպարան փառաց միածնի Որդւոյն. մարտիրոս յաղթող տէր Գրիգորիոս. բազմաերկաթիւս ընկալան երկնագնաց թաթք ոտից քոց սուրբ. զի բազմացուցես ըզմեզ յերկիւղն Աստուծոյ:

ՀԱՅՐ. Այսօր ցընծայ եկեղեցի ընդ անմարմնոցըն դասակցեալ տօնելով զչարչարանս քո տէր սուրբ Ներսէս. որ ի հոգւոյն սըրբոյ աղաւնակերպ իջմամբ վըկայեցար. ‖ բարեխօսեա առ Քրիստոս վասն անձանց մերոց: Քահանայապետ ընտրեալ. արժանապէս շնորհօք հոգւոյն բաշխեցեր զփըրկական մարմին եւ զարիւնըն Տեառն. յորում հրեղէն սիւն ի յերկնից իջեալ. բարեխօսեա: Արդ աղաչեմք ըզքեզ. լուսաւորիչ հոգւոց մերոց նըմանեալ Մովսէսի նախամարգարէին մեծի. լուսափայլեալ դիմօք աստուածահրաշ տեսլեամբ. բարեխօսեա:

ՄՐՏ. Այսօր հրեշտակաց դասքն ի յերկինս ուրախանան ի վերայ ճըգնութեան սըրբոցն: Այսօր ճըգնազգեաց սըրբոց դասքն ի յերկրի պըսակեցան երկնայինն աստուածեղէն փառօք: Այսօր անմարմնոց զինուորութիւնքըն մեծապէս տօնեն. քանզի երկրաւոր զինաւորաց բազմութիւնքն ընծայեցան ի խորան սըրբութեան երկնից:

Նահատակք յաղթողք քաջք ի մարտի. երանելի սուրբ մարտիրոսք. ‖ որք վանեալ ըզթըշնամին խորտակեցէք: Հրեշտակացըն դասքըն տօնակից են մեզ. եւ ջոկք աթոռոցն ը զուարճացեալ բերկրին. ընդ վարդագոյն ձեր հեղուլն արեան. որք: Անթառամ

պըսակըն ձեզ ատանդեալ մընայ. քան զանկանըս պատուականըս զերամգոյն հրաշիւք. որք։

Այսօր մարտիրոսաց դասքըն. ցընծացեալ բերկրին ընդ անուան Տեառն. Քրիստոսի Որդւոյն Աստուծոյ։ Ձայն ի յերկնից վըկայեալ. ասէ եկայք օրհնեալըք Հօր իմոյ. ժառանգորդք երկնից խորանացն։ Լըցէք ըզտեղի անկելոցն. ապըստամբողական թըշնամւոյն որ ի յերկնից վայր անկեալ։

ՄԾ. Աստուածածին խորան լուսոյ. անվայրափակ արփւոյն կենաց որ եղեր մեզ արեւելք արեգականն արդարութեան. եւ նըստելոցս ի խաւարի լոյս ծագեցեր. Վասն այդ ամենեքեան ըզքեզ միշտ մեծացուցանեմք։ Անապական տաճար. եւ մորենի անկիզելի որ զանչէջ հուր աստուածութեանն ի քեզ տարեալ կրեցեր. որով բնութեանս կիզեալ շիջաւ կրից բոց. վասն։ Կենդանի տապանակ. կտակարանաց նորոյ ուխտիս որով եղեւ երկիր աւետեաց հորդեալ. Հոգւով ի քեզ տըպաւորեալ Բանին. վասն։

ԻԶ. Ցաղթող եւ զնոր օրհնութիւն միշտ ի բարձունս երգեսցուք թագաւորին Քրիստոսի հաւատացեալ ժողովուրդք։ Որ եկն ի լուսաւորել զընտրեալ սուրբ զեկեղեցի. եւ պըսակեաց սուրբ խաչիւն նըշան ըզփառս երգեսցուք։ — Փառք Հօր։ Այսօր եւ մեք տօնեսցուք զնաւակատիս սուրբ խաչին. եւ փըրկողին մատուսցուք փառք եւ պատիւ յաւիտեան։

— Այժմ և միշտ։ Այսօր ի լրումն աստուածային երգոյն. անցանէին ընդ ջուր մաքրեալք որպէս զոսկի փորձելով ի հուր. եւ համբարձեալք ի յերկնային զինուորութիւնսըն դասելով ընդ անմարմին զըւարթունսն. որ ես փառաւորեալ ի մէջ սըրբոց քոց Քրիստոս խընամեա ի մեզ։

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԴԶ

Այսօր տօնելով ըզյիշատակ քաջ եւ յաղթող վըկայիցն. որք ի Սեբաստիա արիաբար ընդդիմամարտեալ հերքեցին ըզմոլութիւն անօրէն կռապաշտութեանցն. բարեպաշտութեամբ զքեզ դաւանեալ միանական սուրբ Երրորդութիւն. || օրհնեալ Տէր Աստըւած հարցըն մերոց: Որք հանդիսացեալք խրախուսելով ընդ երկնային զինուորութեանցն բոլորիցըն հոյլսն. եւ միաբանութեամբ յանկնարկելին իւրեանց ըզքեզ վերանկարգային յօգնութիւն. ամենակարող զօրութեամբըդ մինչ թագաւոր յաւիտենից. օրհնեալ: Իսկ բըղխումըն յորդառատ ուղխ սուրբ արեանցն. ի ձուլել պատուականն մարմնոցն ի դըժընդակ ծղոյն. եւ վերինախնամ տեսչութեամբ ճառագայթարձակ փայլմամբ բոլորեալ պըսակըս յանմատոյց լուսոյն. քեզ յաւէտ ժամբար հընչմամբ ընդ հոգեղէնացըն դասըս վերերգեսցուք. օրհնեալ:

Գ. ԸզՏէր օրհնեցէք || բարձր արարէք յաղթողական ձայնիւ ըզքնարկեալըն ի մէջ սըրբոց: Այսօր հրաշափառ ծագմամբ Որդին միածին. զճառագայթս աստուածութեանն երեւեցուցեալ ի մէջ լըճին. արփիահրաշ փայլմամբ լուծանելով ըզպաղումըն դառնաշունչ դըժընդակ օդոյն եւՁ: մու բարձր: Այսօր վերանորոգող սուրբ Հոգին ճըշմարիտ. նախագուշակ տեսլեամբ հօտապետին յայտնեալ ըզգանձըս հոգեւորս. եւ բոցաճաճանչ հրաշիւք ի փայլումըն նըշուլիցըն համահաւաքեալ ի հոսանս ջուրցն եւՁ: մու բարձր:

## ՄԵԾԱՑՈՒՑԷ ԴՋ

Ծագումն հրաշալի որ անյայտ էր ի մէնջ. եւ բանն հայրական անըմբռնելի. հուր փայլակնացեալ և ի մարմնի բնակեցաւ. անվըրնամս պահելով զարարածս ամենայն։ Ծագումն հրաշագործ որ ի կուսէն ծագեցաւ. ճառագայթելով զարարածս ամենայն. երկինք ցնծային և երկիր ուրախանայր. եւ Քրիստոս Աստուած ընդ մարդկան շրջեցաւ։ Առ քեզ ապաւինիմք ամենասուրբ թագուհի. գերագոյն և հրաշալի եւ բաշխող բարութեանց. աղբիւր ես ծարաւեաց եւ հանգիստ աշխատելոց. եւ եղեր վերընկալ մատուածային բանին։

## ՈՂՈՐՄԵԱ ԴՋ

Հրաշափառ ծագումն լուսոյ քո Քրիստոս. որ ի մէջ լըծին. զարմացոյց սուրբ ըզքահանայսն. Ողորմեա մեզ Աստուած։ Լուսափայլ ողորմութեան քո շնորհք. ծագեալ ի մէջ քահանայից. զարմացոյց սուրբ ըզմանկունսն. ողորմեա։ Երանելի վըկայք քո Քրիստոս. նահատակեալք ի պատերազմի եւ ընկալան զանապական պսակն. ողորմեա։

## ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԴՋ

Այսօր ցընծան դասք հրեշտակաց. քանզի անուանք ձեր գրեցան ի դըպրութեան կենաց ով սուրբ քառասունք ընդ որս և մեք երգեսցուք Քրիստոսի օրհնութիւն։ Ով երջանիկ ճառագայթք որ զօրութեամբ աստուածայնոյն ըզպաղումն լըճին եղկացուցէք և աղօթիւք ըզպակասումն չորրորդ դասին լըցուցէք։ Սուրբք եւ սիրեցեալք ի Քրիստոսէ. լուսաւորիչք աշխարհի պարծանք սուրբ եկեղեցւոյ. բարեխօսեցէք առ Տէր վասն անձանց մերոց։

ՄԱՆԿՈՒՆՔ ԴԿ ՍՏ·

Զանուանըն Տեառն. Լուսապայծառական ացըն տօնիւս. պայծառացեալ հաւատացեալք պըսակիղին. որք ի Սեբաստիա ծովուն գծովածուփ կենցաղոյս լուծին ըզվտանգ. ‖ Ճըգնութեամբ. սոցա մ մ մաղթեա-ցուք զհաշտութիւն անձանց: Քրիստոսաձի ամր եր-կնաւոր. ճառագայթիւք. տապանաւ յր ծովըն սանձապատ ըն ճիւն. վասն զի պատուական արեան-ցըն հեղըով. զկապուտակ ըղծովըն վարդագոյն ներ-կէր. Ճըգ: Թագաւոր ամր երկնաւոր. որ ըզթիւ սըրբոց քոց բարեգթութեամբ ըղըյցեր. զմիաբանութիւնըս մեր օրհնեա. զի մի տք. ծցոեալ ի բանաւրկուէն ելցէ արտաքս ի կորըստական բաղանիսն. Ճըգ:

ՑԵՐԵԿՈՑԻ ՀԱՄԲ. ԲԿ. Որ պատուիրան: Տեր է վայել:

# Ե · ԿԻՒՐԱԿԷ · ԲԿ
## ՔԱՌԱՍՆՈՐԴԱՑ

### Ի ԳԻՇԵՐԻ

ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԲԿ

°Որ պատուիրան ճըշմարտութեան աւանդեցեր ե-կեղեցւոյ քո Քրիստոս. անասնական ժամանակաւ և. աղօթել միշտ առ Աստուած հօգւով և մըտօք: °Որ ըզգբան քո օրինաց հաստատեցեր գործով մեզ օրի-նակ. հանելով զգիշերն ի գլուխ յաղօթսն Աստուծոյ. բնութեամբ մերով տնօրինաբար. որում կըրկնի ծնունր ամենայն: °Վասն որոյ և մեք պաղատեացուք առ քեզ Քրիստոս. շնորհեա մեզ յամենայն ժամ լինել քեզ յանդիման. մաքուր աղօթիւք ըստ անմար-մնոցն որ յերկինս: °Աղաչանօք Աստուածածնին

Digitized by Google

անապական քում ծնընդին. զիմանալի աչըս սրտից մերոց. բացցես ողորմութեամբ հայել ի լոյս քո Քրիստոս։

† Դատաւոր արդարութեան հաստատեցեր ի մեզ ըզմիտըս մեր. դատել զհոգի և ըզմարմին. արդարապէս դատմամբ ըստ օրինաց քոց Քրիստոս։ Իսկ անիրաւ դատաւորին որ ի քաղաք բնութեան մերոյ. ոչ ունելով զերկիւղ քո սուրբ. և անպատկառ ի մարդկանէ ոչ առնելով դատ զըրկելոյն։ Այլ անմահ սուրբ փեսայիդ այրի հոգի իմ պաղատի. ուստ զիրաւունըս քո իմում դատաւորիս. առնել ինձ դատաստան արդար ընդ ոսոխի մարմնոյ իմոյ։

ՎԱՐ. Ճառագայթ փառաց Հօր Որդիդ միածին. որ ըզլոյսդ անվայրափակ մարմնով պարագրեալ. ‖ այսօր ի Թաբօր փառօք փայլեցեր։ Որ անտես սրովբէից անհաս ի վեր քան ըզբան. ծառայի կերպիւ պարածածկեալ ըզլոյսդ անըստուեր. այսօր։ Որ հրեղինացն անմերձենալի հուր աստուածութեանդ. ի հողեղէնս խոնարհեալ լոյսդ արփիական. այսօր։

Որ գերագոյն փառօք պայծառացոյց զԱդամ առաջին. զոր ճաշակմամբ պտղոյն մերկացաւ ըզփառս անպատճումս. այսօր վերըստին փառօք զարդարեաց։ Որ ի Նախնումն երեւեալ Մովսեսի ամպովքն ի Սինա. այսօր լուսափայլ ամպովք ի Թաբօր յայտնեալ վըկայեաց. դա է իմ Որդի դըմա լըւարուք։ Որ ի յերկինս վերացոյց հրեղէն կառօք զԵղիա. այսօր վայրաբերեալ ի Թաբօր հանդերձ Մովսեսիւ. խօսէին զելիցն որ յԵրուսաղէմ։

ԱԳ. Ընդ լուսափայլ զուարթնոյն. ըզյարուցեալն օրհնեսցուք. եւ մաղթելով խընդրեսցուք մաքրել ըզ-

լուսոյն արժանացուք հոգւով ‖ ամենայն գործըք Տեառն ըզՏէր օրհնեցէք։ Այսօր պահօք ճըշմարտութեան ելցուք. և լեառըն փորձութեան ընդ Քրիստոսի. պատերազմել ընդ թըշնամւոյն զի յաղթեսցուք նովաւ ա։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԴՁ

Աստուածածին. գերագոյն քերովբէից բանին բարձող որ զամենայն կրէ զօրութեամբ. ‖ բարեխօսեա առ Տէր վասըն մերոյ փրկութեան։ Մայր սըրբութեան. բարձրագոյն սերովբէից զանտեսն ինքեանց ի քեզ կրելով ծագեցեր լոյս աշխարհի. բարեխօսեա։ Ծառ կենաց. որ զանմահութեան պըտուղն ի քէն ետուր նախնոյ մօրն Եւայի. և մահաբեր երկանց ազատելով. բարեխօսեա։

Իւղաբերից Աւետարան Մատթէոսի։ ԻԸ. 1։ Եւ յերեկոյի։
Այս Զամենայն աւուրս։

ՈՂՈՐՄԵԱ ԴՁ

Դատաւոր արդար. որ հաստատեցեր ի մեզ դատող բնութեան ըզմիտըս մեր. շնորհեա սըմա դատել զանձինս իրաւամբք և արդարութեամբ. ‖ խնայեա ի մեզ Տէր ողորմութեամբ։ Փեսայ երկնաւոր հարսին քո եկեղեցւոյ. զայրին եղեալ ի քէն զհոգիս մեղօծք. մաքրեա զըթութեամբ և յօղեա ի քեզ միութեամբ. խնայեա։ Որ մահուամբ մարմնոյ քո մեռուցեր ըզմեղս. և յարութեամբ քո յարուցեր ի մեզ զարդարութիւն. տուր զօրութիւն հոգւոյս կամաց հնազանդել ըզկամբս մարմնոյս. խնայեա։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԴՁ

Որ փառաբանիս ի հրեշտակաց ընդ Հօր և Հոգւոյն. Քրիստոս Որդի Աստուծոյ. խոնարհեցար ի հողեղէն

բնութիւնս համբերելով խաչի վասն մեր. || վասն որոյ գըթա ի մեզ մարդասէր Փրկիչ։ Որ ըզհին մարդըն մեր մեղաց ի խաչին սպաներ. Նորոգելով ըզնոր մարդն արդարութեան յուսով կենացն անվախճանից ի նորոգումըն նոր Ադամայ. վասն։ Կենդանարար քո յարութեամբդ անմահ թագաւոր. կենդանացո զմեռեալըս մեզ կենդանական գործովք բարեաց ըստ լուսաւոր քոց պատուիրանաց. վասն։ Շնորհեա մեզ Տէր ըզգաստութիւն արթուն լինել ըստ դըռնապանին. զի ի բաղխել սուրբ փեսային բացցուք ըզսիրտըս քոց մըտից ընդ քեզ և Հօր քո և Հոգւոյդ լինել օթեվան. և երգեսցուք Երրորդութեանդ ըզփառս ի բարձունս։

---

Աւետարան Սաղմոս ՃԺԲ։

ԿԶ. Եղիցի անուն։ Փխ. Օրհնեցէք մանկունք։

## Օրթի

### Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մարկոսի. ԺԳ. 1։ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի

Եւ յելանելն նորա ի տաճարէ անտի, ասէ ցնա մի յաշակերտացն նորա. վարդապետ, տե՛ս որպիսի՛ են քարինքս, և որպիսի՛ շինուածք։ Պատասխանի ետ նմա Յիսուս և ասէ. տեսանե՞ս զայդ ամենայն շինուածս, ամէն ասեմ ձեզ՝ եթէ ոչ թողցի այդր քար ի քարի վերայ՝ որ ոչ քակտեսցի։ Եւ մինչ նստէր նա ի լերինն ձիթենեաց յանդիման տաճարին, հարցանէին ցնա առանձինն՝ Պետրոս և Յակոբոս և Յովհաննէս և Անդրէաս։ Ասա՛ մեզ՝ երբ լինիցի այդ. և զի՞նչ նշան է՝ յորժամ կատարելոց իցէ այդ ամենայն։ Պատասխանի ետ Յիսուս, և ասէ ցնոսա. զգո՛յշ կացէք, մի՛ ոք զձեզ խաբեսցէ։ Զի բազումք եկեսցեն յանուն իմ, և ասիցեն՝ թէ ես եմ Քրիստոսն. և զբազումս մոլորեցուսցեն։ Այլ յորժամ լսիցէք պատերազմունս և համբաւս պատերազմաց՝ մի՛ խռովիցիք, զի պարտ է լինել. բայց չև է կատարածն։ Զի

յարիցէ ազգ յազգի վերայ, և թագաւորութիւն ի թագաւորութեան վերայ. և եղիցին շարժմունք ի տեղիս տեղիս, սովք և սրածութիւնք և խռովութիւնք. այլ այն ամենայն սկիզբն է երկանց: Եւ զձեզ իսկ մատնեսցեն յատեանս, և ի ժողովուրդս տանջիցիք, և առաջի դատաւորաց և թագաւորաց կայցէք վասն իմ ի վկայութիւն նոցա, և ամենայն հեթանոսաց. բայց նախ պարտ է աւետարանիս քարոզել: Այլ յորժամ տանիցին զձեզ մատնել, մի՛ յառաջագոյն հոգայցէք, և մի՛ զմտաւ ածիցէք՝ թէ զի՞նչ խօսիցիք, այլ որ ինչ տացի ձեզ ի ժամուն յայնմիկ՝ զայն խօսիցիք. զի ոչ դուք էք որ խօսիցիքն՝ այլ Հոգին սուրբ: Մատնեսցէ եղբայր զեղբայր ի մահ՝ և հայր զորդի. և յարիցեն որդիք ի վերայ հարց, և սպանանիցեն զնոսա: Եւ եղիջիք ատեցեալք յամենեցունց վասն անուան իմոյ. այլ որ համբերեսցէն իսպառ՝ նա կեցցէ: Եւ յորժամ տեսանիցէք զպղծութիւն աւերածին. զի կայցէ ի տեղւոջ ուր չիցէ արժան. որ ընթեռնուն ի միտ առցէ: Յայնժամ որ ի Հրէաստանի իցեն՝ փախիցեն ի լերինս. և որ ի վերայ տանեացն իցէ՝ մի՛ իջցէ ի տուն, և մի՛ մտցէ բառնալ ինչ ի տանէ իւրմէ. և որ յագարակին իցէ՝ մի՛ դարձցի յետս՝ առնուլ զձորձս իւր: Բայց վա՜յ իցէ յղեաց և ստնտուաց յաւուրսն յայնոսիկ: Յաղօ՛թս կացէք՝ զի մի՛ ձմերանի լինիցի այն: Եղիցին աւուրքն այնոքիկ նեղութեանց որպիսի ոչ եղեն երբէք այնպիսիք ի սկզբանէ արարածոց մինչև ցայժմ, և մի՛ այլ լիցի: Եւ եթէ ոչ էր կարճեալ Աստուծոյ զաւուրսն զայնոսիկ վասն ընտրելոց իւրոց, ոչ ապրէր ամենայն մարմին. այլ վասն ընտրելոցն զորս ընտրեաց՝ կարճեաց զաւուրսն զայնոսիկ: Յայնժամ եթէ ոք ասիցէ ձեզ, եթէ ահաւասիկ է Քրիստոսն՝ կամ աւանիկ, մի՛ հաւատայցէք: Զի յարիցեն սուտ Քրիստոսք և սուտ մարգարէք, և տացեն նշանս և արուեստս՝ առ ի մոլորեցուցանելոյ եթէ հնար ինչ իցէ և զընտրեալսն: Բայց դուք զգո՛յշ լերուք՝ ահաւասիկ յառաջագոյն ասացի ձեզ զամենայն: Այլ յաւուրսն յայնոսիկ յետ նեղութեանն այնորիկ արեգակն խաւարեսցի, և լուսին ոչ տացէ զլոյս իւր: Եւ աստեղք յերկնից թօթափեսցին, և զօրութիւնք յերկինս շարժեսցին: Եւ յայնժամ տեսցեն զորդի մարդոյ եկեալ ամպովք՝ զօրութեամբ և փառօք բազմօք: Եւ

Digitized by Google

*յայնժամ առաքեսցէ զհրեշտակս իւր, և ժողովեսցէ զըն-տրեալս իւր ի չորից հողմոց՝ ի ծագաց երկրի մինչև ի ծագս երկնից։ Բայց դուք ի թզենւոյ անտի ուսջի՛ք զա-ռակն. յորժամ ոստքն նորա կակղանայցեն և տերև արձակիցի ի նմա, գիտէք թէ մերձ է ամառն. նոյնպէս և դուք՝ յորժամ տեսանիցէք զայս ամենայն եղեալ, գիտասջի՛ք թէ մերձ է առ դուրս։ Ամէն ասեմ ձեզ, թէ ոչ անցցէ ազգս այս՝ մինչև այս ամենայն եղի-ցի։ Երկինք և երկիր անցցեն, և բանք իմ ոչ անցանի-ցեն։ Այլ վասն աւուրն այնորիկ և ժամու՝ ոչ ոք գիտէ՝ ոչ հրեշտակք յերկինս՝ և ոչ Որդի, բայց Հայր միայն։ Զգո՛յշ եղերուք. սկեցէ՛ք և կացէ՛ք յաղօթս. զի ոչ գի-տէք ե՛րբ ժամանակն իցէ։ Որպէս այր մի գնացեալ ի տար աշխարհ՝ թողուցու զտուն իւր. և տայցէ ծառայից իւրոց իշխանութիւն, և իւրաքանչիւր զգործս իւր. և դռնապանին պատուէր տայցէ, զի արթուն լինիցի։ Արդ արթո՛ւն կացէք, զի ոչ գիտէք ե՛րբ տէր տանն գայցէ, յերեկորեայ՝ եթէ ի մէջ գիշերի՝ եթէ ի հաւախօսի՝ եթէ ընդ առաւօտս։ Գուցէ եկեալ յանկարծակի՝ գտանիցէ զձեզ ի քուն։ Բայց զոր ձեզդ ասեմ, ամենեցուն ասեմ արթո՛ւն կացէք։ 37։*

---

ՑԵՐԵԿՈՑԻ ՀԱՄԲ. ԲԿ. *Դատաւոր արդարութեան*։ 253։

---

# Ե. ԵՐԿՈՒՇԱԲԱԹԻ. ԳԶ

## ՑԱՌԱՒՕՏՈՒ

### ՀԱՐՑ ԴՁ

ՀԱՒՐՑԸՆ *մերո՛ց Աստուած. ո՛ր ապրեցուցե՛ր զերի՛ս մանկո՛ւնս ի հնո՛ցի՛ն. || փա՛ռա՛ւորեա՛լ յա՛ւիտեա՛ն։ Ե՛րգէի՛ն մա՛նկունքն ի՛ հնո՛ցին ա՛սեծըլո՛վ. օ՛ր-հնեա՛լ ես թա՛գաւոր ա՛նմա՛հ. փա՛ռա՛ւորեա՛լ։ Շի՛ջու-ցի՛ն ը՛զբո՛ց հրո՛յն բո՛րբոքեծըլո՛յ. ձա՛յնի՛ւ քա՛ղցրու-թեա՛մբ ե՛րգէ՛ի՛ն. փա՛ռա՛ւորեա՛լ։*

*Գ. Ը՛զ Տէր օրհնե՛ցէ՛ք բա՛րձր ա՛րարէ՛ք ը՛նդ նա՛ յա՛ւի-տեա՛ն։ Զթա՛գաւո՛րըն Քրի՛ստոս հրե՛շտակա՛յի՛ն օրհնո՛ւ-*

Digitized by Google

թեամբ ‖ բարձր սրբարէք ընդ յաւիտեան։ Քահանայք աստուածաբանելով ժողովուրդք առաւել բարձր։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԴՁ

Ըզքեզ օրհնութեամբ մեծացուցանեմք։ Որ ըզԲանն Աստուած յարգանդի կրեցեր սրբուհի անարատ. և անճառապէս ծնար ըզվերբարձողն երկնից. ըզքեզ։ Որ էից լուսոյն արժանի եղեր բառնալ ի քո գիրկս. և արեգականն արդարութեան եղեր արեւելք. ըզքեզ։

ՈՂՈՐՄԵԱ ԴՁ

Համբառնամ առ քեզ Տէր զաչս իմ նայել յես գըթութեամբըդ քո և ողորմեա։ Դու ես յոյս և ապաւէն իմ զերծո զիս յորոգայթէ մեղաց և ողորմեա։ Ապրեցուցիչ իմ և փըրկիչ իմ ապրեցո զիս յորոգայթէ մեղաց և ողորմեա։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԴՁ

Տէր երկնի և երկրի. արարող և յոյս մեր։ Խընամեա յանձինս մեր Քրիստոս թագաւոր երկնի և երկրի։ Աղաչեմք ըզքեզ այց արա փըրկիչ յուսացելոցս ի քեզ։

---

# Ե· ԵՐԵՔՇԱԲԱԹԻ· ԳԿ

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԴՁ

ՀԱՐՑԸՆ մերոց Աստուած. որ ի նեղութեան կեցուցեր ըզմեզ. առաւել փառաւորեալ յաւիտեան։ Յաղթող զօրութեամբ քո Քրիստոս. ի հուրն ընկեցեալ պահեցին մանկունքն. որ գըտին զօգնութիւն ցօղովք օրհնութեան։ Շիջուցին ըզբոց հրոյն ըզպատանեակքն արհամարհեցին ըզբռնաւորին. ընդ չորրորդ հրեշտակին օրհնաբանէին։

Գ. Ընդ Տէր օրհնեցէք || բարձր արարէք ընդ յաւիտեանս։ Տիւք եւ գիշերք ըզՏէր օրհնեցէք բարձր։ Իսրայէլ ըզՏէր օրհնեսցէ. Զաստուածըն յաւիտենից. բարձր։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԴԶ

Աննարատ կոյս Աստուածածին Մարիամ սրբուհի եւ մայր Քրիստոսի. յարգանդի տարար զանտանելին ամենեցուն. || օրհնութեամբ ընդ քեզ Աստուածածին. մեծացուցանեմք։ Ընդ քեզ երկնային դուռըն զոր ետեսն Եզեկիէլ. եւ ասրըն զոր ծանեաւ Գեդէոն. սերովբէ հողեղէն վեհագոյն քերովբէից. օրհնութեամբ։ Երիս խորհուրդըս սոսկալիս ի քեզ տեսանի Աստուածածին. յղութիւն անսերմնական ծնունդ անարատ. կուսութիւն յետ ծըննդեան մնալով անապական. օրհնութեամբ։

ՈՂՈՐՄԵԱ ԴԶ

Բազմութեամբ յանցանօք. ծանրաբեռնեալ է անձն իմ. միայնոյ քեզ մարդասիրի աղաչեմ. ողորմեա ինձ Աստուած։ Բըղխմամբ արտասուաց. եւ հառաչանօք սրտի իմոյ. անդադար հայցեմ բազմամեղութեամբ քաւեա զիս Աստուած։ Բազմագութ մարդասէր. շնորհեա զթողութիւն իմոյ յանցանաց. զի առ քեզ միայն պաղատիմ քաւեա զիս Աստուած։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԴԶ

Որ ի բարձունս բնակեալդ ես եւ ի քեզ եմք ապաւինեալ. || արարածք ամենայն օրհնեն զքեզ։ Որ մոլորելոց հովիւդ ես. դարձո ի մէնջ ըզցասումըն քո արարածք։ Որ ծարաւելոց աղբիւրդ ես եւ քաւիչ ես մեղաւորաց արարածք։

# Ե· ՉՈՐԵՔՇԱԲԱԹԻ· ԴՁ

## ՑԱՌԱՒՕՏՈՒ

### ՀԱՐՑ ԴՁ

Որ յամենայնի ցուցեր ըզքո սքանչելիսդ. եւ ի բոլորեց փառաւորեցար երրեակ միութիւն. զքեզ ընդ օրհնաբանողըն բարեբանեմք։ Որ ըզբորբոքեալ ըզհուրն ի ցօղ փոխեցեր. եւ զարգելեալսն ի նըմին պահպանեցուցեր. զքեզ։ Որ ըզբըռնութիւն թագաւորին խորտակեցեր. և զկուսացեալսն ի զօրութիւնըդ քո փառաւորեցեր. զքեզ։

Գ. Գործըք Տեառն ըզՏէր օրհնեցէք բարձր արարէք յաւիտեան։ Գիշերք ըզՏէր օրհնեցէք. Ըզնըմանեալսն ի յաթոռ փառաց. ըզբամմւրեբանեալն ի հրեշտակաց. ըզնա անդադար օրհնեն։ Իսրայէլ ըզՏէր օրհնեսցէ. Որ յահէ փառաց աստուածութեան. դողամամն զըւարթունք երկնից. ըզնա անդադար օրհնեն։

### ՄՆԾԱՑՈՒՍՑԷ ԴՁ

Ուրախացիր Աստուածածին. որ կուսութեանց ես պարծանք եւ մայր հաստատութեան մարդկան. ծընական և շընորհ աշխարհի Մարիամ մայր և աղախին Փըրկչին մերոյ։ Երանելիդ ամենեցուն զԱստուած տանելով ըզբնութեամբ անտանելի զամենեցուն ամենակալն. արժանի եղեր կրել յորովայնի. որ երեւեցաւ ազգի մարդկան։ Քերովբէական աթոռ ցուցար Աստուածածին. ի գիրկըս բառնալով զԱստուածն ամենեցուն որ նըստի ի քերովբէս. առ նա միշտ բարեխօսեա կեցուցանել ըզմեզ։

### ՈՂՈՐՄԵԱ ԴՁ

Որ զաղաղակ կընոջն այլազգւոյ. առընկալեալ Փըր-

կոյս մարդասիրապէս. || Եւ զիմս անպաշխարութեան
արար արժանի ըզձայն մեղուցելոյս ընդունող: Որ
հաստատեալ ձայնիւ ազախնոյն. ոչ լռեցեր փրկիչ ըն-
դունակ մեղաւորաց. եւ զիմս: Որ զառաջնապարգեւեալ
քո նշխար. ոչ խնայեցեր ընձեռել շանըն հովուասիրի.
եւ զիմս:

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ·ԴԶ

°Երկնային զօրութեանցըն զինուորութիւնքըն. քեզ
երգաբանեն կան յանդադար փառաբանութեան:
Առաքելոց և մարգարէիցըն դասք փառաբանեն
անլռելի. փառք վերածագողիդ ըզլոյս: Եւ
մեք հանդիսակից ընդ նոսին. փոխարկեալք ընդ
ըզ վերին զօրսըն ըզ գովելով անանցողուք. փառք
ի բարձունս Աստուծոյ:

---

# Ե· ՀԻՆԳՇԱԲԱԹԻ· ԴԿ

## ՑԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԴԶ

ՃՇՄԱՐՏԱՊԷՍ գոհանամք ըզքէն. || Տէր Աս-
տուած հարցըն մերոց փառաւորեալ յաւիտեան: Որ
երկայնամիտ ես յամենայնի. խնայեա ի մեզ Տէր:
Ի տաճարի քում խընդրեմք ի քէն. մի անտես առ-
ներ ըզմեզ Տէր:

Գ. ԸզՏէր || Ըզքո տէրութիւնըդ հանապազ օրհնա-
բանեմք: Որ իջեր ի հնոցըն փրկեցեր զմանկունսն
ի ձեռաց անօրինացն. շիջուցեր ըզհուրըն հողմաբեր
ցողովն. ըզքո: Երգէին մանկունքն ի մէջ հըն-
ոցին սաղմոսիւք եւ օրհնութեամբ. գովէին ըզքեզ
թագաւոր փառաց. ըզքո:

Digitized by Google

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԴՁ

Որպէս լեր Մարիամ սուրբ Աստուածածին. զի ի տաճարին մաքրեցելոյ յանկարծակի եկն Տէր. ‖ ըընդքեզ օրհնութեամբ մեծացուցանեմք։ Որպէս լեր դուռն փակեալ ընդ որ ոչ ոք մտեալ. բայց Տէր Աստուած Իսրայելի. ըընդքեզ։ Որպէս լեր աղբիւր կնքեալ ջրոյն կենդանութեան. զոր ծարաւելոյ բնութեանս ետուր ի յարբումն. ըընդքեզ։

ՈՂՈՐՄԵԱ ԴՁ

Անկանիմ առաջի քո և խնդրեմ զթողութիւն յանցանաց իմոց. ‖ մի անտես առներ Հայր զաղաչանս իմ։ Աղաղակեմ որպէս մաքսաւորն և հեղում զարտասուս իմ առաջի քո որպէս պոռնիկն. մի։ Յանկերեւոյթ թըշնամւոյն պարտեցայ եւ ի գաղտնի նետից բանսարկուին վիրաւորեցայ. մի անտես առներ Հայր զաղաչանս իմ։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԴՁ

Օրհնեցէք ըզՏէր յերկինըս զօրք և ամենայն հրեշտակք. որ հզօրք էք հարկաւորութեան սպասաւորիչք Տեառն։ Օրհնեցէք ըզՏէր յերկրէ կէտք և ամենայն կայտառք. որ տեսակք էք բազմաւոր հօտի փառաբանիչք Տեառն։ Օրհնութիւն նոր երգեցէք Տեառն եկեղեցիք սըրբոց. որ որդիք էք վերին Սիոնի օրհնաբանիչք Տեառն։ Հանապազ օրհնեմք ըզքեզ անհասանելի Փըրկիչ. որ միայնդ ես փառաւորեալ Տէր յարարածոց քոց։

---

# Ե· ՈՒՐԲԱԹ· ԱՁ

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԴՁ

Տէր Աստուած մեր. որ հաստատեցեր ըզլոյս և զխաւար ի սկըզբանէ օրհնեալ ես Տէր Աստուած հար-

ցըն մերոց ։ Մարգարէն Դանիէլ աղօթէր առ Տէր Աստուած ապրեցուցանել զերիս մանկունսն ի հնոցին ի Բաբելոնի ։ Բարձր արարէք զԱստուած հարցըն մերոց յաւիտեանս որ ապրեցոյց զօրհնաբանսն ի ձեռաց մահու ։

Գ. ԸզՏէր ։ Ըզնա անդադար բարձրացուցանեմք ։ Որ ի տուէ օրհնի անդադար ձայնիւ սրովբէիւք եւ մարդկամբ. ի գիշերի և յամենայն ժամու. ըզնա ։ Զբորբոքեալ ըզհուրըն շիջուցին աղօթիւք սուրբ մանկունքն ի հնոցին. եւ ըզհրաշալի ըզձայնն ընդ հրեշտակս երգէին առելով. ըզնա ։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԴՁ

Որ ըստ խորհրդոց Աստուածածին վերօրհնեալդ ի սրովբէից. ծագեցեր ի քէն մեզ լոյս մայր եղեր վերանձգողին. Ազգ եւ ազինք ըզքեզ մեծացուցանեմք ։ Հին եղեր եկեղեցւոյ խորան եղեր հոգւոյն սրբոյ. ի հրեշտակաց սպասաւորեալ Գաբրիէլ քեզ աւետեաց. ազգ ։ Տեսանեմք ըզզօրակալի զհրաշալի խորհուրդ յայտնեալ. ի հոգւոյն սրբոյ յղացեալ զԲանն Աստուած մարմնով ծընար. ազգ ։

ՈՂՈՐՄԵԱ ԴՁ

Անկանիմ առաջի քո Տէր. բազմամեղիս ողորմեա ։ Աղաղակեմ առ քեզ Փրկիչ քանանացւոյն ըզձայն բազմամ ։ Մաքսաւորին հառաչմամբ կարդամ առ քեզ Փրկիչ եւ բարերար բազմամեղիս ։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԴՁ

Օրհնեմք ըզքեզ Հայր ի յամենայն ժամ։ Գովեմք ըզքեզ Որդի միածին. ի յամէն ։ Բարեբանեմք ըզքեզ Հոգիդ ճշմարիտ. ի յամէն ։

# Ե. ՇԱԲԱԹ. ԱԿ

## Ս. Գրիգորի լուսաւորչին մերոյ մուտն ի վիրապն:

### Ի ԳԻՇԵՐԻ

### ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԳԿ

ԱՅՍՕՐ զուարճացեալ ցնծայ եկեղեցի. դրախտ աստուածատունկ ծաղկեալ. յորմէ տուաւ մեզ տունկն անմահութեան տէր Գրիգորիոս. եւ պտղովն իւրով ելից ընդ տիեզերս ամենայն: Բարունակ ողկուզաբեր ճշմարիտ որթոյն. մշակեալ հայրական աստուածային աջովն. յորմէ բղխեաց բաժակն ուրախարար տրտմեցելոյ ազգիս. որով արբեալ ըզմայլեցաք յուրախութեան հոգեւոր: Գառնանմանբեր հընչմամբն հարաւային հողմոյն. ձայնառագայթեալ հրով աստուածային Հոգւոյն. որով հալեցաւ սառն կռապաշտութեան հիւսիսաբնակ ազանց. եւ եղեն ծաղկեալք աստուածային գիտութեամբն: Դրախտ նորազուարճ տնկեալ յաշխարհիս Հայոց. բազմազան քըրտամբք տէր Գրիգորիոս. արբեալ ի վտակաց հոսման քարոզի ճշմարիտ Բանին. ծաղկաւէտ լցեալ հրաշագեղ տընկօք: Երկնային լոյս ծագեալ ի յերկրի ցուցար. պայծառացեալ փայլմամբ ի յարփւոյն կենաց. որով հերքեցաւ խաւար թանձրամած հայաստանեայց ազգի. եւ տեսին ըզլոյս շնորհաց սուրբ Հոգւոյն: Զօրաց հրեղինաց անմարմնական դասուց. պայծառակցեալ ցնծան ընդ հողանիւթ բնութեանս. որ ընծայեաց Տեառն Աստուծոյ զտէր Գրիգորիոս. որով նուիրին ի փառս ուղղափառ հաւատոյ մանկունք: Էական բարւոյն կերպարան բարեաց. հովուապետ բարի տէր Գրիգորիոս. քաղցրաձայն հընչմամբ դարձուցիչ մոլորեալ հօտին. ժողովեալ ի հօտ ճշմարիտ հովուին: Ընտրեալ յԱստուծոյ քահանայապետ անբիծ. քարոզող

ճշմարիտ Աստուծոյ բանին. ընծայեցեր Տեառն Աս-
տուծոյ նոր ժողովուրդ մաքրեալ. հրաւիրեալ ի փառս
վերնոյն Սիոնի։ Թագ պարծանաց արշալուսնեաց
կազմեալ. առաքելական վարուք տէր Գրիգորիոս. յօ-
րինեցար բազմագոյն ականբք հանդիսից նահատակու-
թեան. վայելուչ պճնեալ հիւսեալ սուրբ եկեղեցւոյ։
Ժառանգորդ եղեր հայրենի սեփհական հօտին. վե-
ճակեալ Թադէոսի սուրբ առաքելոյն. պարգեւական
զաւակ կենդանի նշխարաց նորին. շառաւիղ շնորհաց
աղօթիւք հայցեալ։ Ի փշաքեր արմատոյ վարդ կար-
միրափթեալ ծաղկեալ. առաքելաշնորհ տէր Գրիգորիոս.
անուշահոտ բուրմամբ լցեր ըզհայաստան աշխարհս.
յայտնելով ի մեզ ըզհոտ գիտութեան։ Լուսապայծառ
ծաղիկ ի յերկրի ցուցար. բըժիշկ հոգւոց մերոց տէր
Գրիգորիոս. քաղցրաճաշակ արմաւենի ի տանն Աստու-
ծոյ տընկեալ. պարարտացեալ պտղով հաւատոյ ման-
կանց. Խոստովանող Քրիստոսի ճշմարիտ վըկայ.
բազմաշարչար նահատակ տէր Գրիգորիոս. զպսակաւու-
թիւն չարչարանաց Տեառն ի մարմնի քում կրեցեր.
որով ցընծայ եկեղեցի ի փառս որդւոց Սիոնի։ Ծնող
հոգեւոր աստուածանման սիրով. գըրըվանգութ հայր
պարծանաց տէր Գրիգորիոս. չարչարանօք մարմնոյդ
մաքրեցեր ըզմեզ ի յաղտոյ մեղաց. եւ ծընար որդիս
լուսափայլ բանիւդ։ Կերպարան փառաց միածնի Որ-
դւոյն. մարտիրոս յաղթող տէր Գրիգորիոս. բեւեռս
երկաթիս ընկալեալ երկնագնաց թաթք ոտից քոց սուրբ.
զի բեւեռեսցես ըզմեզ յերկիւղն Աստուծոյ։ Հաստա-
նեայց հայր հաւատոյ հեղինակ ընտրեալ. ճըգնողա-
կան վարուք տէր Գրիգորիոս. ի կոճեղս ոլորեալ հոսեալ
յարենէ սրունք սըրբանեալ մարմնոյդ. համատելով

ըզմեզ ի վէմ հաւատոյ: Զայնիւ մաղթանօք ըզյիշատա-
կըս քո տօնեմք. լուսաւորիչ հոգւոց մերոց հայր Գրի-
գորիոս. կապիճս երկաթիս ծանուցես և դառնամ կըակիծս
կոխամղանաւ ընկալեալ. զետնամածեալ ծընրադրու-
թեամբ ծունկք մարմնոյ քո սուրբ: Դենկօք հաւատոյ
ընդ ծով աշխարհիս անցեր. վըշտակիր մարմնով տէր
Գրիգորիոս. տանջեալ ջուրդեցան աստուածակիր բարձք
անդամոց քոց սուրբ. զի զլուծեալ անդամք հոգւոց
համատարածեսցես վերըստին: Ճըշմարիտ հոգւոյն հան-
ճարով լըցեալ. արդարաբար շնորհիւ տէր Գրիգորիոս.
ստորագլուխ եղեր ջրաշարշար պարպատմամբ եւ ու-
ռուցմամբ ճըզմեալ. զի լուացես ըզմեզ ի յաղտոյ
մեղաց: Մաքրողական աղ համեմիչ հայաստանեայց
եղեր. արիաբար հըսկող հայր Գրիգորիոս. աստուա-
ծային օրինացըն բեռնաբարձ ողամբ կրեցեր ըզծան-
րութիւն աղին. որով բարձեր ի մէնջ զբեռինքս
մեղաց: Ցեռեալ ընդ ոսկեայ ակամբք պատուական
մարգարտաշար հիւսեմք. զչարչարանաց քոց թիւ տէր
Գրիգորիոս. զերկարանօք անուօք եւ տառասանօք չարա-
հնար տանջեալ. դանդանաւանդս եւ զելս աստուածա-
բան բերանոյդ: Նահատակ բարի Քրիստոսի ընտրեալ.
արքայային զինուոր տէր Գրիգորիոս. ստորագլուխ կա-
խամբ դառնահոտ ըլնչմանն արիաբար տարար. զի ուղ-
ղեսցես ըզզգայս ոտից մեր յերկինս: Շառաւիղ լու-
սազարդ ճանապարհին կենաց. երկրին աւետեաց հե-
տեւող տէր Գրիգորիոս. մախրաչունչ եղեր քացախ
ընկալեալ հոգիաչունչ ռընգամբք. պարգեւելով ուրա-
խութեան մեզ օծումն: Ոսկիանձոյլ գերագոյն պատուա-
կան գըլխոյն. համանմանեալ հոգւով հայր Գրիգորիոս.
կըռփեալ հարուածովք եղեալ ի մահուչս աստուածա-

զարդ գլուխ քո. որով բարձրացան գլուխք կորացեալ մեղօք: Զնաշխարհիկ պարծանք հողեղէն բնութեանս. չարչարանօք ժուժկալեալ տէր Գրիգորիոս. տատասկաւ տանջեալ քերանօք քերեալ եւ կապարաւ հալեալ. խանձողեցան նշխարք քո սուրբ ոսկերացդ: Պարանկից հոգեղինաց երկնային զօրացն. սըրբափայլ զգեստիւք տէր Գրիգորիոս. ի խոր վիրապին իջեր ի տղմին ի մէջ դառնաշունչ օձիցն. զի փրկեսցես զմեզ ի չար վիշապէն: Ջերմեռանդն աղօթիւք եւ հոգեւոր սիրով. վաստակեալ յուսով տէր Գրիգորիոս. զանկեալքս ի յերկնից ի խորս անդընդոց զվիրաւորեալքս մեղօք. վերաբերես ընդ քեզ յերկնային խորանն: Ուետին քաղցրութեան մեզ ի վերուստ շնորհեալ. երիւք հընգօք ամօք ի վիրապին ճըգնեալ. աստուածային տեսլեամբն ելեալ բըժըշկէր ըզհարուածեալսն ի դիւաբախ սաստիցն. եւ լուսափայլ բանիւ բըղխմամբ հաստատեցեր ի հաւատս: Սոսկալի տեսլեանն ի վերուստ յայտնեալ. մարգարէահրաշ հոգւով տեսանող եղեր. բացման խորանին վերնական յարկին եւ երկնային լուսոյն. խառնելով մարդկան ընդ հրաբուն զօրացն: Վարդագոյն արեամբ վըկայիցըն Տեառն. մաքրեցաւ երկիրս ի յաղտոյ մեղաց. որ եւ հիմնեցաւ խորան խորհըրդոյ տաճար տէրունի շինեալ. յորմէ բըղխեաց աղբիւր քաւութեան մերոյ: Տանն Աստուծոյ տեսանող բարի. արժանացեալ շնորհիւ տէր Գրիգորիոս. կործանիչ բագնեաց քանդիչ մեհենաց զօրութեամբ խաչին. քահանայապետ ընտրեալ աստուածային յայտնութեամբն: Բարունոյն հրամանաւն ի վերուստ կոչեալ. յառաքելական յաթոռ տէր Գրիգորիոս. յորդառատ բանիւ հոգեւոր ծնընդեամբ լուսաւորեցեր զՀայաս-

Digitized by Google

տան աշխարհս. ընդ ամենայն տեղիս շինեալ խորան փառացն Աստուծոյ: Ցանկալի սրովբէից անմարմնական վարուք. մարմնով տէր Գրիգորիոս. յանապատի բնակեցար հանգոյն Յովհաննու եւ Եղիայի ճըգնեալ. օրէնսդիր աստուածային պատգամաց նըման մեծին Մովսէսի: Ի լծելոց մեղօք տառապեալ որդեացս. աստուածագութ ծընող հայր Գրիգորիոս. հայցմամբ աղօթիւք առ Հայրն երկնաւոր խընդրեա. կատարել զընթացըս մեր ուղղափառութեամբ:

ՄԾ. Ամենագովելի. եւ քան զերկինս բարձրագոյն որ զանհասանելի ընդՏէրն յորովայնի քում կրեցեր. եւ ցնծութիւն աշխարհի ծընար. վասն որոյ ամենեքեան ընդ քեզ միշտ մեծացուցանեմք: Ամենապայծառ բերկրեալ միշտ կոյս որ զանբաւելի ընդբանն անճառաբար յըղացար. եւ ըզմարմնացեալն Աստուած ծընանելով ի քէն. վասն: Ի լեռնէ վէմ անձեռին հատեալ. Դանիէլ գուշակեաց զանսերմն ծնունդ քո. հարսն երկնաւոր. մայր եւ կոյս ծընընդեան մընալով կոյս. վասն:

ԽՁ. Յաղթող եւ զնոր օրհնութիւն միշտ ի բարձունս երգեսցուք թագաւորին Քրիստոսի հաւատացեալ ժողովուրդք: Որ եկն ի լուսաւորել զընտրեալ սուրբ զեկեղեցի. եւ պսակեաց սուրբ խաչիւն նըման ըզփառս երգեսցուք: Այսօր եւ մեք տօնեսցուք զնաւակատիս սուրբ խաչին. եւ փրկողին մատուցուք փառս եւ պատիւ յաւիտեան: — Փառք Հօր: Փըրկաւէտ մահուան կենարար բանին. կենդանի վըկայ տէր Գրիգորիոս. առ ծնեալն ի Հօրէ Որդին միածին լոյսըն ճըշմարիտ հայցեա. լուսաւորել զանձինս մեր աստուածային գիտութեամբն:

— Այժմ և միշտ։ Քնար քաղցրախօս աստուածային հոգւոյն. յօրինեալ մարմնով եւ մասամբք հոգւոյդ. առ բղխեալն ի Հօրէ փառակից Որդւոյ սուրբ Հոգւոյն մաղթեա. զի մաքրեսցէ ըզմեզ ի մեղաց մերոց։

---

ՅԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԴԿ

Որ ի Հօրէ առաքեալ. արեգակն արդար. ծագեցեր ընդ տիեզերս ըզլոյս քո առաքելովքն. ‖ ըզքեզ բարեբանեմք Աստուած հարցըն մերոց։ Որ փոխանակ առաքելոցն. առաքեալ եւ քարոզ. առաքեցեր Հայաստանեայց ըզսուրբըն Գրիգոր. ըզքեզ։ Որ ըզխաւարն անգիտութեան. հիւսիսականացս. հալածեցեր լուսափայլ բանիւ սրբոյն Գրիգորի. ըզքեզ։

Գ. Ըզտէր ընդ Լուսաւորչին լուսաւորեալք նուագաւ բարձր արարէք ըզլոյսն անըստուեր։ Այսօր ժողովուրդք Հայաստանեայց. աշակերտեալք ճըշմարտութեանն ի ձեռըն սրբոյն Գրիգորի. օրհնեցէք ըզլոյսն անըսկիզբըն ‖ բարձր արարէք ըզնա յաւիտեան։ Այսօր նորածնեալք աւազանաւն. լուսաւորեալք իմաստութեամբ ի ձեռըն սուրբ Լուսաւորչին. գովեցէք ըզլոյսն ի Հօրէ բարձր։ Այսօր երկնաւոր պատարագին. կատարող քահանայութիւն ի ձեռըն սուրբ քահանայապետին. բարեբանեցէք ըզբաշխողըն շնորհաց բարձր։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԴԿ

Նահապետացն Աբրահամու Իսահակայ եւ Յակոբայ. պարգեւեցար ի յԱստուծոյ կոյս Մարիամ դուստըր նոցին. երանեն ազգ եւ ազինք այսօր ըզծնեալդ ի յԱննայէ։ Աղախին և մայր կենաց աջոյն ծընօղ Հօր Միածնին. որ առ ի քէն մարմնով ընկէց զամբար-

տաւանըն յաթոռոյ. երանեն ‖ ազգ եւ ազինք այսօր ըզծնեալդ ի յԱննայէ։ Ո՛վ բարձրացոյց զանկեալ բնութիւնս ի քէն ծնընդեամբ Որդին յերկինս. ըզկարօտեալքս ելից հացիւ եւ զմեծատունն ելոյծ ունայն. երանեն։

ՈՂՈՐՄԵԱ ԴԿ

Ո՛վ կոչեցեր ըզհեռացեալքս ի հարսանիս քո Միածնին. ըմպել զբաժակն իմաստութեան ի ձեռըն սրբոյն Գրիգորի. ‖ բարեխօսութեամբ սորա ողորմեա մեզ Աստուած։ Ո՛վ գերագոյն քան ըզբնութիւն չարչարանօք քո ընտրելոյն. դարձուցեր ըզմոլորեալքս ի գիտութիւն ճշմարտութեան. բարեխօսութեամբ։ Ո՛վ ի վիրապն անդընդային ջաղխեր նուաւ զգլուխ վիշապին. ի գբի ներքնում իջմամբ Նորին բարձրացուցեր զմեզ ի յերկինս. բարեխօսութեամբ։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԴԿ

Այսօր զիմանալի լուսոյն ծագողն ի խաւարի նըստելոցս. զԳրիգորիոս սուրբ հայրապետն ‖ եկայք վերապատուեսցուք։ Այսօր զանապական Հոգւոյն պարգեւս բաշխող որդւոց Թորգոմայ. յորդիս լուսոյ նորա ծընեալք եկայք։ Այսօր զաստուածային Բանին պատմող ի Հայաստան աշխարհի. աշակերտեալ նըմա մանկունք եկայք։ Այսօր երգէ եկեղեցի որդւովք իւրովք ընդ հրեշտակս. յիշատակի Լուսաւորչին փառք ի բարձունս Աստուծոյ։

ՄԱՆԿՈՒՆՔ ԳՁ

Այսօր տօնէ եկեղեցի ուրախութեամբ ըզյիշատակ սրբոյն Գրիգորի. որով լուսաւորեալ պայծառացաւ վայելչապէս. ի հանդերձս յոսկեհուռս զարդարեալ եւ պըսակեալ. ‖ օրհնեցէք մանկունք զՔրիստոս թագաւորն։ Այսօր ցընծան նորածնեալ որդիք

լուսոյ յիշատակաւ սուրբ Լուսաւորչին. որով հրաւիրեցան ի հարսանիս անմահական. մտանել ընդ փեսային երկնաւորի ի յառագաստն լուսեղէն. օրհ։ Այսօր քահանայք հոգեւոր պատարագին ըսպասաւորք վերապատուեն ըզքահանայապետն սուրբ. որով երկնայնոց քահանայութեանցն հաղորդեալք. յոր վերափոխեալ այսօր մտանէ ի սրբութիւն սրբոց մինչ բարեխօսել առ Տէր վասն մեր. օրհ։

ՑԵՐԵԿՈՑԻ ՀԱՄԲ. ԲԶ. Որ զխորհուրդ։ Տէ. է կոյր։

## Զ. ԿԻՐԱԿԷ. ԲԶ
## ՔԱՌԱՍՆՈՐԴԱՑ

### Ի ԳԻՇԵՐԻ
*ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԲԶ*

Որ ըզխորհուրդ քո գալըստեանդ յառաջագոյն գուշակեցեր. մարգարէիւքն Իսրայելի զորս ընտրեցեր յետ Մովսեսի. որք խօսեցան Հոգւով սրբով բազմապատիկ օրինակօք. ‖ տուր մեզ փրկիչ ողորմութիւն և ըզմեղաց ըզթողութիւն։ Ի մերձենալ ամաց վերջին զոր տեսանողքըն ծանուցին. ըզհամաստել մեր փրկողիդ առ ի վախճան ժամանակին. երեւեցար ի մէջ մարդկան զգեցեալ ըզկերպ ծառայական. տուր։ Ի վեցերորդ աւուր զԱդամ ստեղծեր ի տիպ քո տէրական. որ ոչ պահեալ ըզպատուիրանըն մերկացաւ ըզպատմուճանն. իսկ նոր Ադամդ ի վեց դարուն այց արարեր կորուսելոյն. տուր։ Տաճար լուսոյ անըստուերին և առագաստ անճառ Բանին. որ ըզնախնոյ մօրն Եւայի բարձեր զանէծսըն տըրտմալի. հայցեմ յՈրդւոյ քո միածնի Հօր հաշտութեանըն միջնորդի. բառնալ ի մէնջ ըզխռովութիւն և տալ զօգւոյ խաղաղութիւն։

† Ըստ աւետեաց մարգարէին որ առ փրկեալքս ա-րեամբ գառինդ. ցնծամք եւ մեք ծառք անտառի ընդ գալուստ Տեառնդ կըրկնակի. շնորհեա մեզ Տէր ընդ արդարոցն ընդ առ ի քէն տնկեալ ծառոցն. այժմ յուսով ը զուարճանալ եւ յերկրորդին ընդ քեզ ցընծալ: Այժմ նման տայ աւետիս Զաքարիա նոր Սիոնի. եթէ ուրախ լեր անձն գայ առ քեզ խոնարհ եւ հեզ արքայ. Նստեալ ի յէշ և յաւանակ կըրկին ազանց զոլ օրինակ. Նստեալդ յաթոռ քերովբէից նիստ գթութեամբ ի մեր հոգիս: Զանհեղ փառաց քոց երեւումն որ լինելոց է յերկրորդումն. ետես Դա-ւիթ յառաջագոյն ծանոյց կանխաւ ազդմամբ Հոգւոյն. թէ յայտնապէս Աստուած գայցէ հուր առաջի իւր բոր-բոքէ. յայնժամ Ցիոն ի մեզ խնայեա գթած Քրիս-տոս եւ ողորմեա:

Յաստուածային ձայնէ գոչմանըն սարսեցին գողա-լով կարապետքըն դժոխոցն. եւ մեռեալն եկն արտաքս ամենապայծառն: Կայցեալ ի դուրս այրին և ձայնէր ազգ մրարող թօթափեալ ի գերեզմանն. Ղազարէ եկ ար-տաքս ամենապայծառն: Ելեալ ի գերեզմանէն երիզա-պինդ պատանօքըն մեռեալն. հրամայեաց լուծանել ի կապանացն յաւիտենից:

Անեղն ի Հօրէ ծնեալ Որդի յանէից գոյացոյց զե-ղեալքս. զերկնային և զերկրաւորս էութիւն. || մրա-րածք ամենայն տուք փառս մրարչին յաւիտենից: Պատկեր աներեւոյթ փառացըն Հօր ի պատկեր բա-րերարութեան իւրոյ. մրար ըզմարդկային բնութիւնս. մրարածք: Լոյսն ի Հօրէ լուսոյ ծագեալ լուսափայլ զարդարեաց զԱդամ. ի դրախտին եդեալ անման տըն-կոցն երկրագործ. մրարածք:

Digitized by Google

Որ նստիս ի քրովբէս Աստուած Բանդ· այսօր վասն մեր խոնարհութեամբ նստար ի լերինն ձիթենեաց· ‖ օրհնեմք զքեզ անդադար երգով։ Որ համագոյդ ես խորհրդոցդ հայրենի· աչակերտաց քոց ծանուցեր զխորհուրդ քո գալստեանն· օրհնեմք։ Որ ամենայնց ես արարիչ և ստեղծիչ կենդանութեան· այսօր զծածկեալ խորհուրդ Երրորդութեանդ յայտնեցեր եկեղեցւոյ սրբոյ քո· օրհնեմք։

Որ ի վերդ ես քան զամենայն զմիտս և զխորհուրդս· ‖ փառաց թագաւոր խնայեա ի մեզ։ Որ միայն ունիս զանմահութիւն և զանեղութիւն· փառաց։ Որ նստիս ի քրովբէս Երրորդութիւն անբաժանելի· փառաց։ Որ երկրպագեալդ ես ի հրեշտակաց և ի մարդկանէ· փառաց։

Օրհնեմք զքեզ անսկիզբըն Հայր· յամենայն ժամ օրհնութիւն ի բարձունս։ Գովեմք զքեզ միածին Որդի· յամենայն ժամ գոհութիւն ի բարձունս։ Բարեբանեմք զքեզ սուրբ Հոգի· յամենայն ժամ փառք քեզ Աստուած։

Օրհնեսցուք և գովեսցուք առաւել բարձր արասցուք· և բարեբանեսցուք զանուն քո ‖ Փրկիչ քեզ վայելէ փառք։ Հրեշտակք և մարդիկք և ամենայն արարածոց լեզուք· զքեզ միայն օրհնեն Փրկիչ։ Երկնային զօրութիւնքն անդադար օրհնութիւն մատուցանեն քեզ Փրկիչ։

ՄԾ· Զքեզ Հայր յառաջ քան զյաւիտեանս բարեբանեն դասք անմարմնոց հրեշտակաց· ձայնիւ երգով գոչեն և աղաղակեն· Աստուած աստուծոց և Տէր տերանց Փրկիչ գոլով։ Առաքեցեր զքո Միածինդ մարմնանալ ի սուրբ կուսէն· և անարատ ծնանիլ յորովայնէ

անապականն. բառնալով զմեր նեղութիւնս. || Աս-
տուած աստուծոց և Տէր տերանց փրկիչ գոլով։
Շնորհեք բարի յերուսաղէմ երեւեցար հեթանոսաց. զի
արարիչն յաւիտենից տղայ եղեալ յորդեգրութիւն
կենաց կոչէ. Աստուած։

ԽԶ. Անապական սուրբ զխաչն օրհնեցուք. որ
եղեւ սատանայորդ աւազակին և յօրինեաց մեզ ճանա-
պարհ || որ ձեւացոյց մեզ. սովաւ մտանել ընդ
դուռն անեղաչէն դրախտին Տեառն։ Բանալի ար-
քայութեան տուաւ հողածին մարդոյն. ուստի յառա-
ջին ճաշակմանէն արտաքս անկեալ ի յաւէժ կենդա-
նութեանն որ։ Գաւազանաձեւ երեւեալ եգիպ-
տականն ազգին. ցուցանելով զզօրութիւն սրբոյ խա-
չին յափշտակելով զգաւազանսն դիւթականն
որ։ Դրոշմ զգայութեան օրինակեալ ի վերայ սե-
մոց դրանց նոցա. աններկիւղ պահելով զժողովուրդն
յանդրանկածախ սատակմանէն որ։ — Փառք
Հօր։ Երեւեալ աղխաւսնման ակն պատուական ի
ձեւ խաչին. հերձանելով զծովն կարմիր առաջնոր-
դելով ժողովրդեանն սեամբ ամպոյ ի լոյսն անմեկ-
նելի որ։

— Այժմ և միշտ։ Աստուածածին անհարսնացեալ յեր-
կրէ երկնից հարսն ընծայեալ. յորժամ բազմիս լուսոյ
նման քո Միածնիդ յաջակողմեան. յայնժամ մաղթեա
ընդ մեր զնոյն փրկել զմեզ յահեղ բոցոյն. համա-
դասել ընդ արդարոցն երգել զփառս ընդ երկնայնոցն։

## ՑԱՌԱՒՕՏՈՒ
### ՀԱՐՑ ԴԿ

Որ յանճառելի ծոց Հօր ծածկեալ անքննելին ծը-
նունդ և Բան. եւ ի հրեշտակաց երկրպագեալ փա-

* Տես ի Ջիկուցումն, էջ ծԸ։

Digitized by Google

ռամբանէիր. ‖ ըզքեզ բարեբանեմք Աստուած հարցըն մերոց։ Որ խոնարհութեամբ իջեալ յաշխարհ շիջուցեր ըզբոց մեղաց. որպէս երբեմն ի Բաբելոնի ի մէջ հը-նոցին. ըզքեզ։ Որ ըստ նախաձայն մարգարէիցն եկիր ի լրումն խորհրդոյ. զոր տնօրինաբար կատա-րեցեր վասն մերոյ փրկութեան ըզքեզ։

Գ. Ըզ Տէր օրհնեցէք ‖ բարձր արարէք ըզնա յաւի-տեան։ Որ յայտնեաց Հոգին տեսլեամբ Դանիէլի մարգարէին. զմիւսանգամ գալըստեանն Քրիս-տոսի զխորհուրդ. բարձր։ Որ ըզչորրորդ գազանն ա-հեղ զապըստամբեալըն յԱստուծոյ. ծանոյց բար-ձեալ զօրութեամբ Աստուածորդւոյն. բարձր։ Որ զհին աւուրցն Աստուած ետես նըստեալ յաթոռ քերով-բէական. և զՈրդի ընդ ամպս երկնից եկեալ բարձր։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԴԿ

Աստուածածին պայծառ քան զերկինս. որ ի մեզ ծագեցեր ըզլոյսըն մեծ եւ գերազանց. որով խաւարն անգիտութեան հալածեցաւ. ‖ սրովբէական ձայնիւ զքեզ բարեբանեմք. եւ հոգեւոր երգով մեծացուցա-նեմք։ Ամպ թեթեւ և լուսաւոր. որ զանձրեւըն կենաց ի քեզ հեղեալ ի յերկնային ծովէն. զոր հո-սեցեր ի յերկիր ծարաւուտ. սրովբէական։ Պարտէզ փակեալ աստուածատունկ եդեմ. որ և ծառըն կենաց ի մէջ դրախտի քո ի Հոգւոյն տընկեալ. անմահական պըտղովն ելից ըզտիեզերս. սրովբէական։

Խոնարհեցաւ Աստուած Մովսէսի։ ԺԵ. 42։ Եւ լիբրև եր։ ԺԶ. 8։ Զհետ Զամենայն աւուրս։ Ես այլ ով ած։

ՈՂՈՐՄԵԱ ԴԿ

Որ ողորմութեամբ զգեցար մարմին. եւ նորո-գեցեր ըզհնացեալըս. նորոգեա և զմեզ հոգւով

Digitized by Google

Քրիստոս եւ ողորմեա։ Որ ի խաչին մե-
ռար մարմնով. եւ զմեռեալսքս դարձուցեր ի կեանս.
կեցո և զմեզ հոգւով Քրիստոս եւ ողորմեա։
Որ յարեարդ ի մեռելոց. եւ յարուցեր ըզբնու-
թիւնս մեր յուսով. յարո և զմեզ։ Որ ըզսիրե-
լին քո զՂազարոս. կոչեցեր ի գերեզմանէն. կո-
չեա և զմեզ հոգւով ի կեանս. եւ ողորմեա։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԴԿ

Նորահրաշ տեսլեամբ յարութեան քո Տէր ահե-
ղակերպ փայլմամբ. զարհուրեցան դըժոխք.
եւ մեռեալք ընդ կենդանւոյդ յարեան ի հաւատ
համբորէն յարութեան։ Յորժամ փառօք հայրենի Քրիս-
տոս ծագիս ի յերկնից. եւ յարուցանես ըզմե-
ռեալսն. յայնժամ դասեա ընդ աջմէ քումմէ եւ կո-
չեա զմեզ ի փառըս քո։ Յորժամ հեծանոցաւ դատո-
ղութեան քո Տէր. սըրբես ըզկալ աշխարհի.
յըշտեմարանս արքայութեանդ ժողովեա զմեզ ընդ
արդարոցն։ Յորժամ եկեղեցի հարսնացեալ միանայ
ընդ փեսայիդ. ընդ իմաստուն սուրբ կուսա-
նացն. արժանացո առագաստին ըզմեզ ընդ նոսին
երգել ըզփառս ի բարձունս։

---

Առաւօտու Սաղմոս ՃԺԲ։

ԿՑ. Եղիցի անուն։ Փխ. Օրհնեցէք մանկունք։

## Օրթի

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու։ ԻԱ. 5։
Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ յասել ոմանց զտաճարէն, թէ գեղեցիկ վիմօք և աշտարակօք զարդարեալ է, ասէ։ Զայդ ամենայն զոր տեսանէք, եկեսցեն աւուրք՝ յորս ոչ թողցի այդր քար

ի քարի վերայ, որ ոչ քակտեսցի: Հարցին ցնա և ասեն. վարդապետ, ե՞րբ լինիցի այդ, և զի՞նչ նշան իցէ՝ յորժամ այդ լինելոց իցէ: Եւ նա ասէ. զգոյշ կացէք, մի՛ խաբիցիք. զի բազումք գայցեն յանուն իմ և ասիցեն՝ թէ ես եմ. և մերձեցաւ ժամանակ, մի՛ երթայցէք զկնի նոցա: Եւ յորժամ լսիցէք պատերազմունս և խռովութիւնս՝ մի՛ զարհուրիցիք, զի պարտ է նախ այնմ լինել. այլ ոչ առժամայն կատարած: Յայնժամ ասէ ցնոսա. յարիցէ ազգ յազգի վերայ, և թագաւորութիւն ի թագաւորութեան վերայ: Եւ շարժմունք մեծամեծք. և ի տեղիս տեղիս սովք և սրածութիւնք, եղիցին արհաւիրք և նշանք մեծամեծք յերկնից: Բայց յառաջ քան զայս ամենայն, մխեսցեն զձեռս իւրեանց ի ձեզ՝ և հալածեսցեն. մատնեսցեն ի ժողովուրդս և ի բանտս, և տանիցին առաջի դատաւորաց և թագաւորաց վասն անուան իմոյ. և լինիցի ձեզ այն ի վկայութիւն: Արդ՝ դիք ի սիրտս ձեր՝ մի՛ յառաջագոյն կրթել տալոյ պատասխանի: Զի ես տաց ձեզ բերան և իմաստութիւն, որում ոչ կարիցեն կալ հակառակ՝ կամ տալ պատասխանի ամենայն հակառակորդքն ձեր: Մատնեսջիք և ի ծնողաց և յեղբարց և յազգականաց և ի բարեկամաց, և սպանանիցեն ի ձէնջ. և եղիջիք ատեցեալք յամենեցունց վասն անուան իմոյ. և մազ մի ի գլխոյ ձերմէ ոչ կորիցէ. և համբերութեամբ ձերով ստասջիք զոգիս ձեր: Այլ յորժամ տեսանիցէք շուրջ պատեալ զօրօք զԵրուսաղէմ, յայնժամ գիտասջիք թէ մերձ է աւեր նորա: Յայնժամ որ ի Հրէաստանի իցեն՝ փախիցեն ի լերինս, և որ ի միջի նորա իցեն՝ խուսեսցեն, և որ ի գաւառս իցեն՝ մի՛ մտցեն ի նա. զի աւուրք վրէժխնդրութեան են այնոքիկ՝ առ ի կատարելոյ ամենայն գրելոց: Բայց վա՛յ իցէ յղեաց և ստնտուաց յաւուրսն յայնոսիկ. զի եղիցի տագնապ մեծ ի վերայ երկրի, և բարկութիւն ժողովրդեանն այնմիկ: Եւ անկցին ի սուր սուսերի, և գերեսցին յամենայն հեթանոսս. և Երուսաղէմ եղիցի կոխան յազգաց՝ մինչև կատարեսցին ժամանակք հեթանոսաց: Եւ եղիցին նշանք յարեգական և ի լուսին և յաստեղս. և յերկրի տագնապ հեթանոսաց՝ յահեղ բարբառոյ իբրև ծովու և խռովութեան, յելանելոյ ոգւոց մարդկան յերկիւղէ և ի կարծեաց եկելոց ի վերայ տիեզերաց. զի զօրութիւնք

երկնից շարժեսցին։ Եւ յայնժամ տեսցեն զորդի մարդոյ եկեալ՝ ամպովք զօրութեամբ և փառօք բազմօք։ Եւ յորժամ սկսանիցի այս լինել, ամբարձջիք և բարձրացուցջիք զգլուխս ձեր. զի մերձ է փրկութիւն ձեր։ Եւ ասաց առակ մի նոցա. տեսէք զթզենիդ և զամենայն ծառ. յորժամ ցուցանիցեն զպտուղ իւրեանց, տեսանէք՝ և ի նոցանէ ճանաչէք եթէ մերձ է ամառն։ Նոյնպէս և դուք՝ յորժամ տեսանիցէք զայս ամենայն եղեալ՝ գիտասջիք թէ մերձ է արքայութիւնն Աստուծոյ։ Ամէն ասեմ ձեզ. թէ ոչ անցցէ ազգս այս, մինչև այս ամենայն լինիցի։ Երկինք և երկիր անցցեն, և բանք իմ ոչ անցանիցեն։ Զգոյշ լերուք անձանց, գուցէ ծանրանայցեն սիրտք ձեր շուայտութեամբ և արբեցութեամբ՝ և հոգովք աշխարհականօք, և յանկարծակի հասանիցէ ի վերայ ձեր օրն այն. զի իբրև զորոգայթ հասանիցէ ի վերայ ամենեցուն, որ բնակեալ են ընդ ամենայն երեսս երկրի։ Արթուն կացէք այսուհետև, յամենայն ժամ աղօթս արարէք. զի արժանի լինիջիք զերծանել յայնմ յամենայնէ որ լինելոց է, և կալ առաջի որդւոյ մարդոյ։ Եւ ի տուէ ի տաճարին ուսուցանէր, և զգիշերս ելեալ ագանէր ի լերինն՝ որ կոչէր ձիթենեաց։ Եւ ամենայն ժողովուրդն կանխէր ընդ առաւօտս առ նա ի տաճարին լսել ի նմանէ։ 38։

ՑԵՐԵԿՈՑԻ ՀԱՄԲ. ԲԶ. Ըստ աւետեաց մարգ։ 274։

# Զ. ԵՐԿՈՒՇԱԲԱԹԻ. ԲԿ

## ՑԱՌԱԻՕՏՈՒ

ՀԱՐՑ ԴԿ

Աստըւած հարցըն մերոց օրհնեալ։ Երեք մանկունքն ի հնոցին երգէին. Հայր անըսկիզբն. քեւ պարծեսցին անձինըք մեր։ Իջանէր ամպ ցօղագին և հովանի լինէր նոցա. սուրբ Հոգին քաջալերէր ասէր ես ընդ ձեզ եմ յաւիտեան։

Գ. ԸզՏէր օրհնեցէք եւ ‖ բարձր արարէք ըզնա յաւիտեան։ Զէակից Բանըն Հօր. որ երեւեցաւ

ի մէջ հնոցին. օրհնեցէք ամենայն ազինք եւ բարձր։ Ընդ զօրըս հրեշտակաց. միաբանական օրհնութեամբ. բարեբանեցէք զի վերայ քերովբէիցն. եւ բարձր։ Ընդ երիս մանկունս. զհամաբնակիցըն հօր. անդադար բարեբանեցէք քահանայք ժողովուրդք առաւել բարձր։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԴԿ

Աստուածածին մայր եւ կոյս. ծագող արեգականն արդարութեան որ լուսաւորեաց զմեզ. ‖ Հոգեւոր երգով զքեզ բարեբանեմք եւ փառաւորեմք զմիածին քո զՈրդին։ Անլոյծ զօրէնըս բնութեան մարդկան. հրաշափառ քո ծընունդ. եւ զէութիւն բնութեանն ամբողջ պահեալ եւ կուսութեանըդ քո ոչ խախտեցան կընիք. Հոգեւոր։ Զքեզ մորենի անկէզ. լեառըն վիմածին դուռըն փակեալ եւ աղբիւր կընքեալ. նախատեսացըն գուշակեալ մայր եւ կոյս. Հոգեւոր։

ՈՂՈՐՄԵԱ ԴԿ

Քրիստոս Աստուած յոյս ապաշխարողաց. շնորհեա զթողութիւն բազում յանցանաց իմոց։ Առ քեզ բազմագութ ապաւինեալ կարդամք մի մերժեր զմեզ յողորմութենէ քումմէ։ Որպէս զաւազակն աղաղակեմ առ քեզ յիշեա եւ զիս Տէր. ի քում արքայութեանդ։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԴԿ

Յիշեա զմեզ Տէր յորժամ գաս. թագաւորութեամբդ քո։ Շնորհեա մեզ Տէր զթողութիւն. բազում յանցանաց մերոց։ Ուսո մեզ Տէր փառըս տալ մեծի տէրութեանդ քո։

---

# Ձ. ԵՐԵՔՇԱԲԱԹԻ. ԳՁ

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

### ՀԱՐՑ ԴԿ

ՀԱՐՑԸՆ մերոց օրհնեալ ես Տէր. ուղիղ են ճանապարհք քո։ Արդար ես դու Տէր ուղիղ են ճանապարհք քո։ Աստուած երկայնամիտ խնայեա յարարածս քո։ Որ յաւիտենից ես առաւել բարձրացեալ աղաղակեմք Աստուած։

Գ. Ըզտէր օրհնեցէք եւ բարձր արարէք զնա յաւիտեան։ Տիւք և գիշերք զՏէր օրհնեցէք եւ առաւել բարձր։ Իսրայէլ զՏէր օրհնեսցէ Զաստուած. Տէր եւ արարիչ ամենայնի. ամենայն գործք օրհնեցէք. եւ բարձրացուսցէք զնա յաւիտեան։

### ՄՆԾԱՑՈՒՍՑԷ ԴԿ

Ըզքեզ Աստուածածին. աղբիւր անսպառ լուսոյն. որ լուսաւորէ զհամատարածս. միաբանական ձայնիւ երգով մեծացուցանեմք։ Դու պարծանք կուսութեան մարդկան. դու ուրախութիւն հրեշտակաց. դու բարձօղ անիծիցն. վասն որոյ զքեզ Աստուածածին. մեծացուցանեմք։ Դու ճշմարիտ արեւելք. արեգական արդարութեան. յորմէ ծագեաց փրկութիւն տիեզերաց. միաբանական։

### ՈՂՈՐՄԵԱ ԴԿ

Ալիք յանցանաց զիս ալեկոծեն. եւ մեղք իմ բազում զիս յանդիմանեն։ Այլ զինչ արարից մեղուցեալ անձամբս. որ չեմ ապրելոց յահագին հրոյն։ Մեղայ քեզ Քրիստոս Որդի Աստուծոյ. շնորհեա զթողութիւն բազում յանցանաց իմոց։

ՏԷՐ ՅՆՐԿՆԻՑ ԴԿ

Օրհնեմք զքեզ անսկիզբն Հայր. որ յաւիտենայն ժամ օրհնիս ի դասուց քերովբէից։ Գովեմք զքեզ միածին Որդի. որ անդադար փառաբանիս ի դասուց սերովբէից։ Անդադար բերանով անհանգիստ բարբառով. բարեբանեմք սուրբ զՀոգին որ փառակից ես Հօր և Որդւոյ։

---

# Զ. ՉՈՐԵՔՇԱԲԱԹԻ. ԴԿ

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԴԿ

Օրհնեալ || Տէր Աստուած. օրհնեալ։ Օրհնեալ Տէր Աստուած. որ ցօղեցեր երից մանկանց օրհնեալ Տէր։ Զթանձրացեալ հուրն շիջոյց զբորբոքեալ բոցոյն. ծանուցեալ բռնաւորին անօրինէր. և եւս բարեբանեմ զքեզ Տէր։

Գ. ԶՏէր օրհնեցէք և || բարձր արարէք զնա յաւիտեան։ Գիշերք զՏէր օրհնեցէք և առաւե-[illegible]լ բարձր։ Իսրայէլ զՏէր օրհնեսցէ. Տէր որ ի Բաբելոնի առաքեցեր զմիածին Որդին. և զհուր հնոցին շիջուցեր յերից մանկանցն. ընդ նոսին օրհնեմք զքեզ գովեմք և փառաւորեմք։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԴԿ

Աստուածածին և սրբուհի. որ զԲանն Աստուած անսերմն յղութեամբ յարգանդի կրեցեր. || անդադար երգով մեծացուցանեմք։ Զքեզ մայր կուսութեան և յղութեան լուսոյ. և առաւօտ անճառելի բնակողին ի քեզ փեսայացեալ Բանին. անդադ։ Քեւ լուծան կնիք դատապարտութեանն. և քեւ կանգնեցաւ մեղուցեալ մայրն գլորեալ. վասն որոյ զքեզ Աստուածածին և կոյս. անդադ։

Digitized by Google

ՈՂՈՐՄԵԱ ԴԿ

Տէր որ ի մէջ լերինն. աղբերացուցեր ըզջուրն ի վիմէն։ Տէր ի սրտէ իմմէ. հան ինձ արտասուս ապաշխարութեան։ Զի կեցից եւ ապաշխարութեամբ ապրեցայց ի հանդերձեալ քոց դատաստանացդ։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԴԿ

Մի աստուածութիւն երրորդութիւն անբաժանելի որ ի հրեշտակաց անդադար օրհնաբանիս։ Անմարմնոց զինուորութիւնք փառաբանեն ըզքեզ իշխան Հայր Աստուած։ Զորեքկերպեան կենդանիքըն վայելուչ. աղաղակեն առ քեզ իշխանակից Որդի եւ Բանդ Աստուած։ Իշխանութիւնք աթոռոց զովեն ըզքեզ ամենասուրբ Հոգի եւ բոլորից Աստուած։

---

# Զ. ՀԻՆԳՇԱԲԱԹԻ. ԴԶ

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԴԿ

ՕՐՀՆԵԱԼ ես Տէր Աստուած հարցըն մերոց. եւ օրհնեալ է անուն սուրբ փառաց քոց || Աստուած հարցըն մերոց։ Քանզի նըւաղեցաք մեք քան զամենայն հեթանոսս. վասն անուան սըրբոյ քո կեցո ըզմեզ Աստուած։ Օրհնեալ ես Տէր որ նըստիս ի քրովբէս եւ հայիս յանդունդս թագաւոր յաւիտենից Աստուած։

Գ. ԸզՏէր || օրհնեցէք եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան։ Որ յոչընչէ արար զամենայն արարածս. եւ զմարդարեաց բանիւ. օրհնեցէք։ Զոր անդադար օրհնեն ամենայն արարածք. քահանայք առաւել զովեցէք եւ։

ՄԵԾԱՑՈՒՑԷ ԴԿ

Որ զանճառելին ծնար սուրբ Աստուածածին։ 103։

ՈՂՈՐՄԵԱ ԴԿ

Մեղուցելոյ անձամբ կարդամ առ քեզ. Հայր երկնաւոր. օգնեա ինձ ի նեղութեանս. || որ մեղօք եմ մեռեալ օգնեա ինձ: Վիրաւորեցայ ես յաներեւոյթ թշնամւոյն. բժիշկ հիւանդաց. բժշկեա զիմ զհիւանդութիւնս. որ մեղօք: Մոլորեցայ ես որպէս զոչխար կորուսեալ. խնդրող գերելոց. խնդրեա զիս ըզմոլորեալս. որ մեղօք:

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԴԿ

Օրհնեմք ըզքեզ Անեղ անսկիզբըն Հայր. անհասանելի եւ փառաւորեալ. յանմարմնոց զինուորութեանց: Գովեմք ըզքեզ Որդի Հօր արարչակից Բանդ. նորոգող և կեանք ազգի մարդկան. թագաւոր յաւիտենից: Զքեզ բարեբանեն ամենայն ազինք. մշտընջենաբուղխ անսպառ աղբիւր. սուրբ Հոգիդ ճշմարտութեան:

---

# Զ· ՈՒՐԲԱԹ· ԴԿ

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԴԿ. ՄՏ.

Անուն քո յաւիտեան: Օրհնեալ ես Տէր. || Աստուած հարցըն մերոց: Վասն Աբրահամու սիրելւոյ քո. մի մերժեր ըզմեզ Աստուած: Որ առաւել բարձրացեալդ ես յաւիտենից. գովեալ եւ փառաւորեալ Աստուած:

Գ. Գործըք Տեառն ըզՏէր օրհնեցէք եւ || բարձր արարէք ըզնա յաւիտեան: Գիշերք ըզՏէր օրհնեցէք Զօրաւորին արարածոց ամենայն ազինք. օրհնեցէք և գովեցէք անդադար ձայնիւ. եւ բարձր: Իսրայէլ ըզՏէր օրհնեսցէ Զթագաւորն թագաւորաց եւ զՏէրըն տերանց. քահանայք և ժողովուրդք սուրբ

եկեղեցւոյ. օրհնեցէք եւ գովեցէք հոգեւոր երգով. եւ բարձր արարէք զնա յաւիտեան:

ՄԵԾԱՑՈՒՑԷ ԴԿ

Աստուածածին սուրբ կոյս անհարսնացեալ Մարիամ. որ օրհնեալդ ես ի կանանց. զքեզ օրհնեմք միշտ որ արժանիդ ես մեծացուցմանց մեք: Անապական տաճար եւ առանց աւատ լուսոյ. որ ի քեզ փեսայացեալ Բանն կենաց բնակեցաւ. զքեզ: Հուրըն կենդանի որ ի մորենին վառեցաւ. զոր անքնին յարգանդի քում կրեցեր եւ ծնար Աստուած եւ մարդ. զքեզ:

ՈՂՈՐՄԵԱ ԴԿ

Ա. Բ. Զարհուրեալ դողացաւ ամենամեղ անձն իմ. յահեղ քոյ դատաստանաց. յաններելի տանջանաց: Քանզի կամաւ մեղուցայ ի մեղս մեծամեծս. արդ կայ եւ մնայ ինձ. աններելի պատուհաս: Արդ անկեալ աղաչեմ. Փրկիչ եւ բարերար. խնայեա յիս ի մեղուցեալս. եւ ողորմեա ինձ բազմամեղիս:

Բ. Բ. Ամենակալ. քաւեա զմեղս իմ զի Աստուած ես ապաշխարողաց: Եւ զհոգիդ սուրբ. մի հաներ յինէն զի: Եւ փրկեա զիս. յահագին հրոյն. զի:

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԴԿ

Ա. Բ. Զառաւօտուն զայն գոչեմ. եւ զբանաւոր պաշտօնս. մատուցանեմք քեզ մարդասէր: Բանդ Բ բարձանց երկիր եւ լուսաւորեցեր. զպարարածս քո Փրկիչ: Եւ հաստատուն արարեր. զեկեղեցի խաչիւ քո. փառաւորեմք զայլըմտեան քո Տէր:

Բ. Կանխեալ լքս է ժամ առաւօտուն. օրհնեմք զքեզ. Տէր ընդ զուարթնոցս երկնից:

Digitized by Google

Արասմ զմեզ. արժանիսմ ողորմութեան քում զի օրհնեսցուք ըզքեզ Տէ... սաօր: Քրիստոս. Փրկիչ մեր. փրկեա զմեզ. յարժամ գալ..ս ի նորոգել զերկիր:

ՄԱՆԿՈՒՆՔ ԴԿ

Յոյս իմ. ի մանկութենէ իմմէ. մի թողուր զիս || Տէր Աստուած իմ: Յոյս իմ. ի ժամանակի ծերութեան իմոյ. մի թողուր զիս Տէր: Յոյս իմ. ի միւսանգամ գալստեանն քո. մի անտես առներ զիս Տէր:

ՑԵՐԵԿՈՑԻ ՀԱՄԲ. ԴԿ. Աստցեն աղօթք: 130:

Ի տօնի Է. հինգերորդ աւուր Մարտի որ է Աւետեաց ամենօրհնեալ սրբոյ Աստուածածնին. յերեկոյէ բանան զխորանն, եթէ յաղագս հանգստեան չէ: Մեսեդի Ծննդեան: Քար. Մայր սուրբ: ՀԱՄԲ. ԱԿ. Խորհուրդն անճառ: Տէր է Հայր: Քար. Վասն խաղաղութեան: Աղ. Հայր գթած: Աղօ. չՀԱՐՑՆ ԴՋ. Որ անխմանալիդ. ասս էար սարօէն. 291: Ջինջ Քար. Սուրբ զԱստուածածինն: Կեցո. Յոյնի: Աղ. Ընկալ Տէր:

# ԱՒԵՏՈՒՄՆ
## Ս. ԿՈՒՍԻՆ ՄԱՐԻԱՄՈՒ
## ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ

### Ի ԳԻՇԵՐԻ

ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԱԿ

ԽՈՐՀՈՒՐԴՆ անճառ ծածկեալն յազգաց եւ յաւիտենից. յայտնեցաւ ի ձեռն հրեշտակապետին այսօր առ կոյսն Մարիամ. || զոր առ Տէր ունիմք բարեխօս վասն անձանց մերոց: Անժամանակն առ ի Հօրէ եւ անմարմինն ծոցածին ծընունդ. այսօր աւետեօքն Գաբրիէլի մարմին զգենու ի սրբոյ կուսէն. զոր: Անտանելին ի համայնից բովանդակիչ բնութեանց բո-

լորից. պարագրի այսօր մարդասիրապէս յորովայնի
աննարատ կուսին. ‖ զոր առ Տէր ունիմք բարեխօս
վասն անձանց մերոց: Աներեւոյթ փառացն Հօր
նըկարագիր անյեղապէս. և ծառայական խոնարհէ
պատկեր ի յարգանդի Հոգւով մաքրելոյ. զոր: Ան-
սահմանըն յէութեան սահմանելեացս էացուցիչ. և վեր
քան ըզբան սահմանի այսօր յորովայնի սըրբուհւոյ
կուսին. զոր: Ուրախութիւն տըրտմեցելոյ բնութեանս
բերկրեալ կոյս Մարիամ. զոր ողջունաբեր աւետեօք
կրեցեր զտըրւօղն ի քեզ զօրէնս ողջունի. առ նա միշտ
բարեխօսեա վասն անձանց մերոց:

† Որ առաքեցեր զՄիածինդ ի փըրկութիւն տիե-
զերաց. անեղ էութեամբ եղանիլ մարմին ի սուրբ
կուսէն Հայր երկնաւոր. ‖ զոր առ քեզ ունիմք բա-
րեխօս վասն անձանց մերոց: Որ զնախագրեալն
առ ի քէն մարգարէիւք եկիր կատարել. անմայր ի
Հօրէ անըսկըզբնաբար լինել անհայր ի սըրբոյ կու-
սէն. զոր: Որ ի լրումն անճառից ի քէն յայտնեալ
ծածկեալ խորհըրդոյ. ի քէն մաքրելոյ երջանիկ կու-
սին Հօր զօրութիւն հովանաւորեալ. զոր:

ՏՆ. Անըսկիզբն Աստուած անճառելի անբաւ զօ-
րութիւն. որ յիսկըզբանց յաւիտենից խնամարկեցեր
զորդիս Ադամայ. զերանգոյն այսօր շնորհիւ փայլեալ
ցուցեր ծընընդեամբ զմայր Միածնիդ քո ընտրելոյ.
‖ աղաչանօք սոցա խընայեա ի մեզ: Որ յանէից բանիւ
գոյացուցեր զաշխարհս ամենայն. այսօր մարդասիրեալ
տնօրինաբար ի յԱննայէ արկեր հիմունս նորոյ աշ-
խարհի. աղաչանօք: Ի յամուլ երկրէ այսօր բուսա-
մեզ բարեբեր բոյսըն բարի. շուշան հովտաց ծաղի-
կըն դաշտաց միամայրըն Մարիամ արմատ տընկոյն
անմահութեան. աղաչանօք:

ՎԱՐ· Զանճառելի ըզլոյս աստուածութեանն տընօրինաբար կրեցեր ի քում յորովայնի Մարիամ մայր եւ կոյս. ‖ օրհնութեամբ ըզքեզ մեծացուցանեմք։ Ի մանաւոր լուսոյն զարհուրեցան դասք առաքելոցն. այլ ի քեզ բովանդակ կրեցեր ըզհուր աստուածութեանըն Մարիամ մայր եւ կոյս. օրհնութեամբ ըզքեզ մեծացուցանեմք։ Առաքելոցըն հովանացեալ ամպ լուսեղէն. գերագոյն քեզ Հոգւոյն սրբոյ եւ զօրութիւն բարձրելոյն հովանաւորեալ սուրբ Աստուածածին. օրհ։

ԾՆ· Որ ըզկենդանիքն անմահարար մահկանացու բնութեամբս ի քեզ կրեցեր սուրբ կոյս Մարիամ. որով մեռեալքս որ յԱդամայ կենդանացաք յուսով յարութեան. ‖ առ նա միշտ բարեխօսեա վասն անձանց մերոց։ Որ ըզԲանն անեղական զէակն էից գոյացութեանց. անճառաբար ծընար մարմին եղեալ ի փըրկութիւն եղականացս. առ։ Որ ըզպըտուղն ի քէն կենաց ընծայեցեր մեռեալն Ադամայ. զորոյ պահօք քառասնօրեայ քաւեաց զպըտղոյն ճաշակումն եւ յանվախճան ըզնորին վերածեաց ի կեանս. առ։

ԾՆ· Ըզքեզ աղաչեմք հանապազ սուրբ Աստուածածին. բարեխօսեա Քրիստոսի Աստուծոյ մերոյ փըրկել ըզմեզ ի փորձութենէ. եւ յամենայն վըտանգից մերոց։ Ուրախ լեր մայր անճառ լուսոյ Մարիամ սուրբ Աստուածածին. քանզի ի քեզ կրեցեր ըզհուր աստուածութեանըն լուսեղէն տաճար Աստուծոյ Բանին. առ նա միշտ բարեխօսեա վասն անձանց մերոց։ Ծնուցար տիեզերաց Աստըւած եւ մարդ գոլով. մարմնացար ի սուրբ կուսէն ի փըրկութիւն ազգի մարդկան. միշտ փառաւորեալ յանմարմնոց զինուորութեանց։

ՀԳ· Որ առաքեցար ի Հօրէ Հոգիդ անեղ եւ հա-



Digitized by Google

մագոյ. աղաչանօք տնօրինաբար քում էակցին լինել մխիթարիչ սուրբ առաքելոցն. || աղաչեմք ըզքեզ ողորմեա: Որ իջեր տիրաբար յերկնից սաստիկ հողմով նըման Աստուած յայտնապէս. եւ ի հրեղէն լեզուս բաժանեալ հանգեար ի դասս առաքելոցն. աղաչեմք: Որ արբուցեր երկնաւոր գինեաւն իմաստութեան զհոգիս սրբոց քոց առաքելոցն. որք արբուցին տըրտմեցելոց որդւոց Ադամայ ըզբաժակն ուրախարար յայգւոյն Եդեմայ. աղաչեմք:

Հն. Յորժամ յերկնից գոչէ փողն ազդեցութիւն առնելով տիեզերաց ի դատաստանն ահաւոր. յայնժամ աւուր յահեղին || յիշեա Տէր եւ ըզմեզ ըննջեցեալսն եւ հանգո ընդ սուրբս քո: Յորժամ ճառագայթք աստուածութեանն փայլեն ի յարեւելից. եւ դըպրութիւնք հրաշալիցըն բանին յայնժամ աւուր յահեղ. յիշեա: Զարհուրեալ դողան արարածք ի ձայնէ սրովբէագոչ փողոյն. յորժամ հարկանէ հրեշտակապետն եւ կոչէ ի դատաստանն զազգս որդւոց մարդկան. յայնժամ աւուր յահեղին յիշեա:

ԱԳ. Որ ի սկզբանէ իմաստութեամբ հաստատեցեր զեկեղեցի Հօր իմաստութիւն. զոր նախանըկար տեսութեամբ նըշանակեաց Մովսէս խորանաւն երկնահանգոյն ի Սինա լերինն. լուսաւորեա փառօքն Աստուծոյ: Որ ըզխորհուրդ անապական տնօրէնութեանըդ քո ի սըրբոյ կուսէն. տըպաւորեալ տապանակն աստուածային ուխտի կտակարանաց Բանիդ Աստուծոյ. փառաց անեզին տեղի հանգստեան: — Փառք Հօր: Որ ի կեանըս վերադարձի բնութեանս դարձմամբն Յորդանանու օրինակեցեր. եւ ըզբըռնութիւն մահու եւ դըժոխոց կործանմամբն Երիքովի տապանակաւ խաչին հրաշագոր-

ծեալ նոր խորայելի. օրհնութիւն քեզ Տէր երգեսցեն մանկունք ։

— Այժմ և միշտ ։ Որ զնախամօրն անիծից երկանց լուծեր ըզզաւակնիք. որ ըզտըրտմական սահմանեաց ծընունդ անախտաբար ծնանելով ի քէն. առնամ միշտ բարեխօսեա վասն անձանց մերոց ։

Ալէլուիա Ծննդեան ——— յոր յոյն որ լինի ։

---

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԴԶ

Որ անիմանալի* ես յէութեան Հայր անըսկիզբն եւ անպատճառ. ի փրկութեան մերոյ սկըզբան առաքեցեր ըզՄիածինըդ մարմնանալ ի սրբոյ կուսէն. օրհնեալ Տէր Աստուած հարցըն մերոց ։ Որ ի Հօրէ անմեկնելի անեղակից Բանդ Աստուած. ըզդասապետ զօրութեանց վերնոցըն նախընթաց քում գալըստեանդ առաքեցեր յառաջագոյն. օրհնեալ ։ Բըղխումն անճառ և անքըննին Հոգիդ անեղ եւ համագոյ. զտնօրէնութեան քում էականցին մաքրագործեալ ըզբնակարան եկաւորութեանն. օրհնեալ ։

Գ. ԸզՏէր օրհնեցէք բարձր արարէք ըզնա յաւիտեան ։ Եկայք փրկեալք կենարար իջմամբ. Բանին Հօր ի յարգանդ կուսին ընդ երկնայնոց դասուցն երգով ըզՏէր օրհ ։ Որ զանէծս երկանց ծնընդեան նախամօրն եղծ. անսերմնապէս ծնանելով յանապական կուսէն. երգով ըզՏէր օրհ ։ Որք վերըստին նորոգեալք եղէք ի հնութենէ մեղաց զնորոգօղ բնութեանս երգով ըզՏէր ։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԴԶ

Ուրախ լեր Մարիամ սուրբ Աստուածածին. զի ի տաճարին մաքրեցելոյ յանկարծակի եկըն Տէր. ըզքեզ

* Տես ի Զեկուցումն, էջ Զ:

օրհնութեամբ մեծացուցանեմք ։ Ուրախ լեր դուռն փակեալ ընդ որ ոչ ոք մտեալ . բայց Տէր Աստուած Իսրայելի . ‖ Ըզքեզ օրհնութեամբ մեծացուցանեմք ։ Ուրախ լեր աղբիւր կնքեալ ջրոյն կենդանութեան . զոր ծարաւելոյ բնութեանս ետուր ի յարբումն . ըզքեզ ։

ՈՂՈՐՄԵԱ ԴՁ

Որ յանէից անմարմնական զօրաց էակ հայր աներկիզբն . ըզզօրապետ խմբից նոցա աւետաբեր այսօր առաքեցեր առ Բանին քո խորան սրբութեան . ‖ Աղաչանօք սորա ողորմեա մեզ Աստուած ։ Որ ի կառս քերովբէից բազմեալ լոյս քան զարեւ յառաջ . ի հաւանութեան հաճեցար այսօր տաճարի բազմիլ փառաց մաքրամաքրեալ որովայնի . աղաչանօք ։ Որ ի ստուեր ճըշմարտութեան խօսեալ յօրէնս տեառնողք . այսօր ի գլուխ գրելոց նոցին հովանացեալ սրբոյ կուսին ի բնակութեան քում էակցին . աղաչանօք ։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԴՁ

Ուրախ լեր Մարիամ կոյս անապական . զի ի հայրական ծոցոյ անմեկնելի Որդին ի քո յանձն առնու բընակիլ յորովայնի ։ Ուրախ լեր երկին վեհագոյն քերովբէ հողեղէն . որ զանտանելին երկնից եւ հրեղէնաց դասուցն ի քո ընկալար մաքրական որովայնի ։ Ուրախ լեր ոսկի հրեղէն լուսոյն աշտանակ . որ զարարչականն եղականաց լուսոյ ի քեզ տանելով ծագեցեր խաւարելոց ։ Ուրախ լեր սափոր ոսկի երկնային հացին . որ զառ ի վերուստ իջեալ ըզմանանայն կենաց նորոյս պարգեւեալ կերակուր Իսրայելի ։ Ուրախ լեր ամպ թեթեւ գեղմն իմանալի . որ ի բանական երկիր հեղեր զանձրեւ կենաց արդիւնս ընդ գործոյ հաւատոյ պըտղաբերեալ ։ Ուրախ լեր դուստր լուսոյ մայր ան-

հարանացեալ. քանզի յղացելոյն ի քէն համախմբեալ վերնոցն. որդիք Սիոնի երգեն ըղփառս ի բարձունս։

Ա——— Երգ Իջցէ որպէս ։ Քող. Մայր սուրբ ։ Զինէ Սուրբ Աստուածին. Մող. Փրկել ։ Քող. Վասն լսելի ։ Քահ. Օրհնութիւն ։ ՍԱՂՄՈՍ ԿԷ. է ԲԷ— ։

Կ8. Տէր տացէ զբան որք աւետարանեն զօրութեամբ բազմաւ ։

Փխ. Յարիցէ Աստուած և ցրուեսցին ամենայն թշնամիք նորա, փախիցեն ատելիք նորա յերեսաց նորա ։

Որպէս պակասէ ծուխ՝ պակասեսցին, որպէս հալի մոմ առաջի հրոյ՝ այնպէս կորիցեն մեղաւորք յերեսաց Աստուծոյ ։

Արդարք ուրախ եղիցին՝ և ցնծասցեն առաջի նորա, և զուարճասցին յուրախութեան իւրեանց ։

Օրհնեցէք զԱստուած՝ և սաղմոս ասացէք անուան նորա. ճանապարհ արարէք այնմիկ՝ որ նստի ընդ արևմուտս, և Տէր է անուն նորա ։

Ցնծասցեն առաջի նորա, և խռովեսցին յերեսաց նորա ։

Որ հայրն է որբոց և դատաւոր այրեաց, Աստուած ի տեղւոջ սրբութեան իւրում ։

Աստուած բնակեցուցանէ զմիակրօնս ի տան, և հանէ զկապեալսն քաջութեամբ իւրով, սոյնպէս և զդառնացօղս որ բնակեալ են ի գերեզմանս ։

Աստուած ընդ ելանել քեզ առաջի ժողովրդեան քոյ, ընդ անցանել քեզ ընդ անապատ, երկիր շարժեցաւ ։

Քանզի և երկինք ցօղեցին յերեսաց Աստուծոյ ի Սինէ՝ առաջի Աստուծոյ Իսրայէլի ։

Անձրև կամաց պատրաստեցեր Աստուած ժառանգութեան քում. թէպէտ հիւանդացաւ՝ սակայն դու հաստատեցեր զնա. և գազանք քո բնակեսցեն ի նմա ։

Պատրաստ արարեր քաղցրութեամբ քով աղքատի Աստուած. Տէր տացէ զբան, որք աւետարանեն զօրութեամբ բազմաւ ։

Թագաւոր զօրութեանց սիրելւոյ, գեղեցկութիւն տան քոյ բաժանեալ յաւարի, թէպէտ և ննջեսջիք ի մէջ վիճակաց ։

Թևք աղաւնւոյ արծաթապատ, և թիկնամէջք նորա ի գոյն ոսկւոյ ։

Ի գումարել երկնաւորին զթագաւորս ի վերայ նորա, ձիւնասցին ի Սաղմոն։

Լեառն Աստուծոյ լեառն պարարտ՝ լեառն մածեալ և լեառն պարարտ, և զի՞նչ կարծէք լերինք հպարտացեալք։

Լեառն ընդ որ հաճեցաւ Աստուած բնակել ի նմա. քանզի և Տէր իսկ բնակեսցէ ի նմա իսպառ։

Կառք Աստուծոյ բիւրապատիկք, հազարք ուղղիչք և Տէր ի նոսա ի Սինէ սրբութենէ իւրմէ։

Ել ի բարձունս և գերեաց զգերութիւն. ա՛ռ աւա՛ր բաշխեաց պարգևս և ետ որդւոց մարդկան. քանզի թէրահաւատից ևս բնակեալ եղիցի ի նմա։

Տէր Աստուած օրհնեալ, օրհնեալ Տէր զօրհանապազ, առաջնորդեսցէ մեզ Աստուած փրկիչ մեր։

Աստուած մեր՝ Աստուած կենարար, և ի Տեառնէ են ելք մահու։

Բայց սակայն Աստուած փշրեսցէ զգլուխ թշնամեաց մերոց, և զհերն կարճնովլին՝ որ գնան յանօրէնութեան իւրեանց։

Ասաց Տէր. ի խորոց անդնդոց դարձուցից, և ի միջոյ ժանեաց զիմս ի դուրս կորզեցից։

Որպէս թացցի ոտն քո յարեան, և լեզուք շանց քոց յարինէ թշնամեաց քոց։

Երևեցան գնացք քո Աստուած, գնացք Աստուծոյ թագաւորին մերոյ սրբոյ։

Կանխեցին իշխանք հանել զօրհնութիւն, ի մէջ կուսանաց և զովչաց։

Յեկեղեցիս օրհնեցէք զԱստուած, և զՏէր յաղբերացն Իսրայելի։

Անդ Բենիամին ի տղայութեան զարմանալի, իշխանք Յուդայ առաջնորդք նորա, իշխանք Զաբուղոնի և իշխանք Նեփթաղիմայ։

Հրամայեա Աստուած զօրութեամբ քով, զօրացո զայս զոր հաստատեցեր ի մեզ։

Ի տաճարէ քումմէ յԵրուսաղեմէ քեզ մատուսցեն թագաւորք զպատարագս։

Սաստեա ի գազան եղեգան, ի ժողովս զուարակաց և ի դաս երնջոց։

Խոտեսցին այնոքիկ որ ընտրեալ են արծաթով, ցրուեա զհեթանոսս և ոյք կամին ընդ պատերազմ։

Digitized by Google

Եկեսցեն հրեշտակք յԵգիպտոսէ, Հնդիկք յառաջագոյն ձեռնտու լիցին առ Աստուած։

Թագաւորութիւնք երկրի օրհնեցէք զԱստուած, և սաղմոս ասացէք Տեառն։

Ճանապարհ արարէք այնմիկ, որ նստի յերկինս երկնից ընդ արևելս։

Ահա տացէ զձայն իւր՝ ձայն զօրութեան, և տուք փառս Աստուծոյ։

Ի վերայ Իսրայէլի մեծվայելչութիւն նորա, զօրութիւն նորա մինչև յամպս երկնից։

Սքանչելի է Աստուած ի վերայ սրբոց իւրոց, Աստուած Իսրայէլի։

Նա տացէ զօրութիւն հաստատութիւն ժողովրդեան իւրոյ. օրհնեալ է Աստուած։

Ալէլուիա, ալէլուիա։

Ընթերցուած յերգոց երգոյն Սողոմոնի: Ա. 1:

Համբուրեսցէ զիս ի համբուրից բերանոյ իւրոյ. վասն զի բարի են ստինք քո քան զգինի, և հոտ իւղոց քոց քան զամենայն խունկս։ Իւղ անոյշ հեղեալ է անուն քո, վասն այսորիկ օրիորդք սիրեցին զքեզ, և ձգեցին զքեզ։ Զհետ հոտոյ իւղոց քոց ընթասցուք մեք։ Տարաւ զիս արքայ ի սենեակ իւր։ Ցնծասցուք և ուրախ լիցուք ի քեզ, և սիրեսցուք զստինս քո քան զգինի։ Ուղղութիւն սիրեաց զքեզ։ Սեաւ եմ ես և գեղեցիկ, դստերք Երուսաղեմի, իբրև զվրանս Կեդարու, և իբրև զխորանսն Սողոմոնի։ Մի հայիք ընդ իս, զի ես սևացեալ թխացայ. քանզի խեթիւ հայեցաւ ընդ իս արեգակն։ Որդիք մօր իմոյ մարտեան ընդ իս, և եդին զիս պահապան այգեստանի, զի զայգին իմ ոչ պահեցի։ Պատմեա ինձ զոր սիրեաց անձն իմ. ո՞ւր հովուես, ո՞ւր հանգուցանես ի միջօրէի. գուցէ լինիցիմ իբրև զընկեցեալն յերամակս ընկերաց քոց։ Եթէ ոչ ծանիցես զանձն քո, գեղեցիկդ ի կանայս. ելեր դու զհետ զարշապարացն հօտից, և արածես զուլս քո ի վրանս հովուաց։ Երիվարացն իմոց ի կառսն փարաւոնի նմանեցուցի զքեզ մերձաւոր իմ։ Քանզի գեղեցկացան ծնօտք քո իբրև տատրակի, պարանոց քո իբրև զմանեակս։ Նմանութիւն ոսկւոյ արասցուք քեզ՝ հանդերձ կիտուածովք արծաթոյ։ Մինչև արքայ ի գիրկս իւր ընկալցի զքեզ։ 11։

Ընթերցուած յԱռակաց: ԺԱ. 30։

Ի պտղոյ արդարութեան բուսանի ծառ կենաց, բարձցին տարաժամ անձինք անօրինաց։ Եթէ արդարն հազիւ կեցցէ, իսկ մեղաւորն և ամբարիշտն ո՞ւր գտանիցին։ Որ սիրէ զխրատ՝ սիրէ զիմաստութիւն. և որ ատեայ զյանդիմանութիւն՝ անմիտ է։ Լաւ է որ գտանէ շնորհս ի Տեառնէ, իսկ այր անօրէն կարկեսցի։ Ոչ յաջողեսցի մարդոյ յանօրէնութենէ։ Արմատք արդարոց ոչ հատցին։ Կին ժրագլուխ՝ պսակ է առն իւրոյ։ ԺԲ. 4։

Ընթերցուած յԵսայեայ մարգարէէ: ԾԲ. 7:

Այսպէս ասէ Տէր. իբրեւ զի գեղեցիկ են ի վերայ լերանց ոտք աւետարանչի համբաւուն խաղաղութեան, իբրև աւետարանչի բարութեանց. զի լսելի արարից զփրկութիւն քո, ասել ցՍիոն թէ թագաւորեսցէ քեզ Աստուած։ Զի ձայն պահապանաց քոց բարձրացաւ, և ի նոյն բարբառ առ հասարակ ցնծասցեն. զի դէմ յանդիման տեսցեն զժամանակ յորում ողորմեսցի Տէր Սիոնի։ Լերինք գոչեսցեն աւերակօքն հանդերձ Երուսաղեմի զցնծութիւն, զի ողորմեցաւ նմա Տէր, և փրկեաց զԵրուսաղէմ։ Եւ յայտնի արասցէ Տէր զբազուկ իւր սուրբ առաջի ամենայն ազգաց. և տեսցեն ամենայն ծագք երկրի զփրկութիւն Աստուծոյ մերոյ։ 10։

Ընթերցուած ի Զաքարիայ մարգարէէ։ Բ. 10:

Խնդա և ուրախ լեր դուստր Սիոնի. զի ահա ես եկից և բնակեցայց ի միջի քում, ասէ Տէր։ Եւ ապաւինեսցին ազգք բազումք ի Տէր յաւուր յայնմիկ. և եղիցին նմա ժողովուրդ, և բնակեսցին ի միջի քում. և ծանիցես՝ թէ Տէր ամենակալ առաքեաց զիս առ քեզ։ Եւ ժառանգեսցէ Տէր զՅուդայ զբաժին իւր յերկրին սրբութեան, և հաճեսցի միւսանգամ ընդ Երուսաղէմ։ Եւ երկիցէ ամենայն մարմին յերեսաց Տեառն, զի զարթուցեալ է յամպոց սրբոց իւրոց։ 13։

Ընթերցուած ի Մաղաքիայ մարգարէէ։ Գ. 1:

Այսպէս ասէ Տէր. ահա ես առաքեմ զհրեշտակ իմ. և տեսցէ զճանապարհս իմ առաջի իմ. և յանկարծակի եկեսցէ ի տաճար իւր Տէր զոր դուքն խնդրէք, և հրեշտակն ուխտի՝ զոր դուք կամիք. ահաւասիկ գայ ասէ Տէր ամենակալ։ Եւ ո՞վ ժուժկալեսցէ աւուր մտի նորա, և կամ ո՞ հանդարտեսցէ յայտնութեան նորա։ 2։

Digitized by Google

Պօղոսի առաքելոյն ի կորնթացւոց երկրորդ թղթոյն է ընթերցուածս: Զ. 16:

Ապաքէն դուք տաճար Աստուծոյ կենդանւոյ էք, որպէս ասաց Աստուած, թէ բնակեցայց ի նոսա, և գնացից ի նոսա, և եղէց նոցա Աստուած, և նոքա եղիցին իմ ժողովուրդ: Վասն որոյ ելէք ի միջոյ նոցա և մեկնեցարուք, ասէ Տէր. և ի պիղծս մի մերձենայք. և ես ընկալայց զձեզ, և ես եղէց ձեզ ի Հայր, և դուք եղիջիք ինձ յուստերս և ի դստերս. ասէ Տէր ամենակալ: Իսկ որովհետև զայս աւետիս ունիմք սիրելիք՝ սրբեսցուք զանձինս մեր յամենայն պղծութենէ մարմնոյ և հոգւոյ, կատարեսցուք զսրբութիւն ահիւն Աստուծոյ: Է. 1:

Ձայնի Ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա.

Հոգին սուրբ եկեսցէ ի քեզ. և զօրութիւն Բարձրելոյն հովանի լիցի ի վերայ քո:

Ալէլուիա, Օրթի

Սրբոյ Աւետարանին որ ըստ Ղուկասու: Ա. 26.

Ի Հօրէն ամենակալէ

Եւ յամսեանն վեցերորդի առաքեցաւ Գաբրիէլ հրեշտակ (յԱստուծոյ) ի քաղաք մի Գալիլեացւոց՝ որում անուն էր Նազարէթ, առ կոյս խօսեցեալ առն, որում անուն էր Յովսէփ՝ ի տանէ Դաւթի, և անուն կուսին Մարիամ: Եւ եկեալ առ նա ասէ. ուրախ լեր բերկրեալդ, Տէր ընդ քեզ: Եւ նա ընդ բանն խռովեցաւ, և խորհէր ընդ միտս՝ թէ որպիսի ինչ իցէ ողջոյնս այս: Եւ ասէ ցնա հրեշտակն. մի երկնչիր Մարիամ, զի գտեր շնորհս յԱստուծոյ: Եւ ահա յղասջիր և ծնցես որդի, և կոչեսցես զանուն նորա Յիսուս: Նա եղիցի մեծ, և որդի Բարձրելոյ կոչեսցի. և տացէ նմա Տէր Աստուած զաթոռն Դաւթի հօրն նորա, և թագաւորեսցէ ի վերայ տանն Յակովբայ յաւիտեանս, և թագաւորութեան նորա վախճան մի լիցի: Եւ ասէ Մարիամ ցհրեշտակն. զիա՞րդ լինիցի ինձ այդ, քանզի զայր ոչ գիտեմ: Պատասխանի ետ հրեշտակն և ասէ ցնա. Հոգի սուրբ եկեսցէ ի քեզ, և զօրութիւն Բարձրելոյն հովանի լիցի ի վերայ քո. քանզի և որ ծնանելոցն է ի քէն՝ սուրբ է, և որդի Աստուծոյ կոչեսցի: Եւ ահա Եղիսաբեթ ազգական քո՝ և նա յղի է ի ծերութեան իւրում. և այս վեցերորդ ամիս է նորա որ ամուլն կոչեցեալ էր. զի ոչ տկարասցի առ յԱստուծոյ ամենայն բան: Եւ ասէ Մարիամ. ահաւասիկ կամ աղախին Տեա-

Digitized by Google

ւրն, եղիցի ինձ ըստ բանի քում. և գնաց ի նմանէ հրեշտակն ։ 38 ։

Եղ Արարչ. շնոր ով օրհնեալ. Բն կնրանն ըն, Նորաստեղծ ։
Քար. Խնդրեսցուք ։ կեցո. յայնժամ ։ Աշ. Քում ամենազօր ։

Ի ՃԱՇՈՒ հանգստեան շարական տաղ է յայնժամ ։

ՃՏ. ԳԿ. Աստուածածին խորան լուսոյ. անվայրափակ արփւոյն կենաց որ եղեր արեւելք արեգականն արդարութեան. եւ նստելոցս ի խաւարի լոյս ծագեցեր. Վասն որոյ ամենեքեան ըզքեզ միշտ մեծացուցանեմք ։ Անապական տաճար. եւ մորենի անկիզելի որ զանշէջ հուր աստուածութեանն ի քեզ տարեալ կրեցեր. որով բնութեանս կիզեալ շիջաւ կրից բոց. վասն ։ Կենդանի տապանակ. կտակարանաց նորոյ ուխտիս որով եկեալք յերկիր աւետեաց հորդեալ. հոգւով ի քեզ տըպաւորեալ Բանին. վասն ։

ՑԵՐԵԿՈՑԻՆ

Մեսեղի Ոգնոց. Մեծացուսցէ ։ Քար. Մայր սուրբ ։

ՀԱՄԲԱՐՁԻ ԴԿ

Աստուածածին սուրբ կոյս անապական տաճար. անպարագիծ էին բոլորից բնութեանց լայնածաւալ տեղի. այսօր ընդ երկրականն զուարթնոյն կրեցեր աւետեաց զՏէրըն տէրանց ի քեզ. ա..ռ որ մաղթեմք բարեխօսել վասըն մեր անլռելի ձայնիւ ։ Ցիմանալի վտակաց տան Աստուծոյ հոսմանց. վիճակեալ տեսանողացըն ձայնի արբմամբ ըզմայլեցար. այսօր զանթառամըն ծաղկեցար ըզծաղիկ ի ժամու տալով զպտուղն. ա..ռ ։ Այսօր ի քեզ լըցեալ Ամովսանեին բարբառ. որ ի փըրկութիւն հասարակաց տուեալ նըշան բնութեան ազգի մարդկան. ահա կոյս յղասցի եւ ծընցի որդի զընդ մեզ յայտնեալըն Աստուած. ա..ռ ։

Ձկնէ Քար. Սուրբ զԱստ ։ կեցո. յայնժամ ։ Աշ. Ընկալ Տէր ։

Digitized by Google

# ՇԱԲԱԹ ԱՋ

## ՅԻՇԱՏԱԿ Է

## ՂԱԶԱՐՈՒ ՅԱՐՈՒԹԵԱՆ

---

Ի ԳԻՇԵՐԻ Երգ Առաւօտ լուսոյ։ Աղ. Զքէն գոհանամք։

Քահ. Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս. ամէն։

ՀԵՏԵՒԱԿ ՇԱՐԱԿԱՆ ԱՋ

ԱՅՍՕՐ գոլով ի Բեթանիա. քո ամենազօր հրամանաւդ. ձայնեցեր Ղազարու և դողացաւ մահ. դժոխք պարտեցաւ ապականութիւն լուծաւ ‖ կենդանարար Քրիստոս կեցո զմեզ։ Այսօր գոլով ի Բեթանիա. զքո զաշխարհակեցոյց սուրբ զյարութիւնդ. յառաջագոյն ծանուցեր անապականաբար կոչմամբ զչորեքօրեայն ի թաղմանէ. կենդանարար։ Այսօր գոլով ի Բեթանիա. եբրայեցւոց մանկունքն ըսքանչացեալ ասէին. զՄարիամու զեղբայրն ի թաղմանէ յարուցեալ. որդւոյն Մարիամու. կենդանարար։

† Կենդանութեանց բաշխող Քրիստոս. ի Բեթանիա եկաւորեալ այսօր. բարեկամին Ղազարու պարգեւէ զկենդանութիւն։ Տնօրինաբար արտասուելով ընդ Մարթայի և ընդ Մարիամու. ողբակցէր և որպէս մարդ հարցանէր ուր եդիք զՂազարոս։ Եւ որպէս զԱստուած բարբառով յարուցանէ ի մեռելոց զչորեքօրեայն. եւ զուգընթաց ձայնին մեռեալն եկն արտաքս անապական։

Քող. Եւ ևս խաղ։ Քահ. Օրհնութիւն և։ Աղօ առէն

ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԲՋ

Ցաստուածային ձայնէ գոչմանն սարսեցին դողալով կարապետքն դժոխոց. եւ մեռեալն եկն արտաքս անապական։ Կացեալ ի դուրս այրին և ձայնէր ազդ

արարող բարբառովն ի գերեզմանն. Ղազարէ եկ արտաքս ամենապականն:

Եկայք որդիք մարդկան այսօր ողբասցուք ըզչօրն ըզվըտանգ. որ մերկացաւ մեղօք ըզփառս արարչին. եւ զգեցաւ զթըզենւոյն ծածկոյթ փոխանակ անճառ լուսոյն: Գովեսցէք զՈրդին Աստուծոյ այսօր ցընծութեամբ որդիք Ադամայ. որ եկն ի խընդիր եղծեալ պատկերին. եւ գըտեալ նորոգեաց ի փառս առաջին պատմուճանին: Նոր նորոգող բնութեան մերոյ Յիսուս որ ի խորհուրդ հընութեան մարդոյն. զանպըտուղն այսօր չորացուցեր զթըզենին. եւ ըզմեզ ի հնացեալ մեղաց նորոգեալ ի կեանս անմահս:

Որ ըզխորհուրդ քո զանըզգատեանդ յառաջագոյն զուչակեցեր. մարգարէիւքն իսրայելի զորս ընտրեցեր յետ Մովսէսի. որք խօսեցան հոգւով սըրբով բազմապատիկ օրինակօք. || տէր մեզ փըրկիչ ողորմութիւն և ըզմեղաց ըզթողութիւն: Ի մերձենալ ամաց վերջին զոր տեսանողքըն ծանուցին. ըզհաստատեալ մեր փըրկողիդ առ ի վախճան ժամանակին. երեւեցար ի մէջ մարդկան զգեցեալ ըզկերպ ծառայական. տէր: Ի վեցերորդ աւուր զԱդամ ստեղծեր ի տիպ քո տիրական. որ ոչ պահեալ ըզպատուիրանըն մերկացաւ ըզպատմուճանն. Իսկ նոր Ադամդ ի վեց դարուն այց արարեր կորուսելոյն. տէր: Տաճար լուսոյ անըստուերին և առագաստ անճառ Բանին. որ ըզնախնոյ մօրն Եւայի բարձեր զանէծսըն տըրտմալի. հայցեա յՈրդւոյ քո միածնի հօր հաշտութեանըն միջնորդի. բաշխել ի մէնջ ըզխռովութիւն և տալ զոգւոց խաղաղութիւն:

Որ ի վերդ ես քան զամենայն ըզմիտս և զխորհուրդս. || փառաց թագաւոր խընայեա ի մեզ: Որ

միայն ունիս զանմահութիւն եւ զանեղութիւն. փառաց: Որ նըստիս ի քրովբէս երրորդութիւն անբաժանելի. փառաց: Որ երկըրպագեալդ ես ի հրեշտակաց եւ ի մարդկանէ. փառաց:

Հգ. Սարսափելի հողմոյ նըման ահեղագոչ սաստիկ հընչմամբ. երեւեցար ի վերնատանն Հոգիդ դասուն երկոտասան. որք առ ի քէն մըկըրտեցան որպէս զոսկի հրով մաքրեցան. ‖ մաքրեա ի մէնջ ըզմէգ մեղաց եւ ըզգեցո ըզլոյս փառաց: Եկիր յերկիր աստուածաբար դատել զաշխարհս իշխանաբար. ընդ արդարութեան եւ ընդ մեղաց եւ ընդ չարին դատաստանաց. բացեր ըզգանձդ անհիւթական պարգեւս ետուր որդւոց մարդկան. մաքրեա: Սէրն ի սիրոյ զսէրդ առաքեաց յինքըն զանդամս իւր քեւ յօդեաց. զեկեղեցի իւր զոր շինեաց եօթըն սեամբ քո հաստատեաց. տընտես ի նմա եդ զառաքեալսն եօթնեակ շնորհօք քո զարդարեաց. մաքրեա:

Հն. Ի ձայն փողոյ գալըստեան քո Տէր ամենայն հոգիք զարթիցեն. կալ ի դատաստանի քում Քրիստոս Աստուած մեր: Յորժամ հընչէ բարբառն ահագին եւ հարկանի փող յարութեան մերոյ. եւ մեք գոչելով ասեմք փառք գալըստեան քո Տէր: Յորժամ առնես հատուցումըն Տէր եւ սուրբք քո պարծեսցին ի քեզ. եւ մեզ շնորհեսցես Փըրկիչ կալ ի յաջմէ քումմէ:

Մծ. Բանն առաքեալ ի Հօրէ որ վասըն մեր մարմնացաւ. եւ ցընծութիւն աշխարհի յայտնեցաւ. ‖ ըզքեզ բարեբանեմք Աստուածածին կոյս: Զի որում ոչըն հանդուրժէին բոցանըշոյլ սերովբէքն. նա բնակեցաւ ի քում յորովայնի. ըզքեզ: Յորմէ սարսեալ դողային փայլակնացայտ ի լուսոյն. ի գիրկըս քո ըզնա ընկալար. ըզքեզ:

Խ2․ Այսօր խընդրի պատուական փայտ խաչին աւանդեալն ի Գողգոթայ ի ձեռն աստուածածանէր դըշխոյին ․ ‖ Եկայք հաւատացեալք երկըրպագեսցուք աստուածային սուրբ նշանին ։ Այսօր ընծայէ Գողգոթայ ըզծածկեալն ի յերկրի ․ վերաբերեալ անուշահոտ խընկովք ի ձեռն երանելւոյն Յուդայի ․ Եկայք ։ — Փառք Հօր ։ Այսօր ի ձեռըն փրկական սուրբ խաչին կենագործի պատանին մեռեալ ․ եւ ողբայ սատանայ ըզկործանումն իւր ․ իսկ մեք Քրիստոսի հաւատացեալք երկըրպագեսցուք ։

— Այժմ եւ միշտ ։ Ելեալ ի գերեզմանէն երիզապինդ պատանօքըն մեռեալն ․ հրամայեաց լուծանել ի կեանսըն յաւիտենից ։

Մաղթ․ Փառք հրաշափառ գալստեան քո Տէր ։
Ալէլուիա Ղողոքոս յորդորեցան ․ Բարձր առնեմ ։

---

ՅԱՐՈՒԱԻՕՏՈՒ

ՀԱՐՑ ԲԶ

Աստուածային գոչմամբ ձայն արկեալ առ Ղազարոս կոչեցեր ի թաղմանէ ․ ‖ Աստուած հարցըն մերոց ։ Որ զարտասուս Մարիամու եւ Մարթայի ոչ անտես արարեր բարերար ․ Աստուած ։ Չորեքօրեայ զմեռեալն իշխանութեամբ անապական կոչեցեր ի թաղմանէ ․ Աստուած ։

Գ․ Գործըք Տեառն ըզՏէր օրհնեցէք եւ ‖ բարձր արարէք ըզնա յաւիտեան ։ Գործք ըզՏէր օրհնեցէք Որ Հօրն է փառակից ․ Ի Բեթանիա եկըն այսօր ․ յարութիւն առնելով Ղազարու ․ օրհնեցէք եւ գովեցէք բարձր ։ Իսրայէլ ըզՏէր օրհնեսցէ Եւ լուծեալ ըզզօրութիւնըս դըժոխոց աստուածաբար կո-

չեաց ըզմեռեալ չորեքօրեայն ի թաղմանէ. օրհնեցէք և գովեցէք բարձր:

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԲԶ

Ընկերակցութիւնըդ քո Աստուածածին անարատ. զոր ոչ բոցակիզեաց հուր աստուածութեանըն մեծացուցանեմք: Որ յարգանդի քում անապականաբար բնակեցաւ. Քրիստոս Աստուած և փրկիչ. անձանց մերոց մեծացուցանեմք: Անհասանելի տէրունական յայտնութիւնն աշխարհի ծագեցաւ. անմատոյց լուսոյն երկրպագեսցուք:

ՈՂՈՐՄԵԱ ԴԶ

Որ ի չորեքկերպեանն կենդանեաց փառաբանիս ի բարձունս. այսօր մարդասիրապէս փրկիչ. ի Բեթանիա երթալ յանձն առեր. ‖ աղբիւր կենաց մեր և յոյս ողորմեա մեզ: Որ յարտասուս Մարիամանց գթացեալ. արտասուեցեր և ասացեր ցնոսա ուր եդիք. ես յարուցից ըզսիրելին իմ զՂազար. աղբիւր: Աստուածային արարչագործ ձայնիւըդ քո Քրիստոս ի թաղմանէ կոչեցեր զՂազարոս. ցուցար կենդանեաց և մեռելոց Աստուած. աղբիւր:

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԴԶ

Աղբիւր անմահութեան բղխեալ ի Բեթանիա կենագործեաց ըզՂազարոս ի թաղմանէ: Կանխեալ Մարիամանցն արտասուօք հառաչմամբ գտին կենդանացեալ զչորեքօրեայ զմեռեալն: Յաստուածային ձայնէ գոչմանըն սարսեցին դողալով դժոխք. և երկզապինդ մեռեալն ըզգեցաւ զանմահութիւն:

Ա—օրա— Երգ Ղազարու. Տէր հաներ ի դժոխոց:

Քարոզ. Փառաւորեսցուք:

ՄԱՆԿՈՒՆՔ ԴԿ. ՍՏ.

Յիսուս միածինն անմահութեանց պարգեւատուն երեւեցաւ ընդ մեզ. խափանեաց զզօրութիւն մահու։ Բըղխմամբ արտասուաց Մարիամու և Մարթայի անկեալ առ ոտսն Տեառն. խնդրէին զնորոգումն եղբօրն։ Բանիւ Բանն Աստուած կենդանագործեաց ըզՂազարոս ի թաղմանէ. և եկեալ արտաքս անապականն։

Ալ. Քոր. Վասն խաղ։ Աշ. Սուրբ են։ Զկնի է Ըն–

ՍԱՂՄՈՍ ԻԹ

Կց. Տէր հաներ ի դժոխոց զանձն իմ. փրկեցեր զիս յայնցանէ, որք իջանեն ի գուբ։

Փխ. Բարձր արարից զքեզ Տէր, զի ընկալար զիս, և ոչ ուրախ արարեր զթշնամիս իմ յիս։

Տէր Աստուած իմ կարդացի առ քեզ և բժշկեցեր զիս. Տէր հաներ ի դժոխոց զանձն իմ. փրկեցեր զիս յայնցանէ, որք իջանեն ի գուբ։

Սաղմոս ասացէք Տեառն սուրբք Նորա, խոստովան եղերուք յիշատակի սրբութեան Նորա։

Սրտմտութիւն է ի բարկութեան Նորա, և կեանք են ի կամաց Նորա։

Ընդ երեկոյս հանգիցեն լալիք, առաւօտու եղիցի ուրախութիւն։

Ես ասացի ի բարեկենդանութեան իմում, թէ ոչ սասանեցայց յաւիտեան։

Տէր ի կամս քո ետուր գեղոյ իմոյ զօրութիւն, դարձուցեր զերեսս քո յինէն՝ և ես եղէ խռովեալ։

Ես առ քեզ Տէր կարդացի, առ Աստուածդ իմ աղաղակեցի. զի՞նչ օգուտ է քեզ յարենէ իմմէ, թէ իջանեմ ես յապականութիւն։

Մի թէ հո՞ղ խոստովան առնիցի առ քեզ, կամ պատմեսցէ զճշմարտութիւնս քո։

Լուաւ ինձ Տէր և ողորմեցաւ, և Տէր եղև ինձ օգնական։

Դարձոյց զսուգ իմ յուրախութիւն, զերծ յինէն զքուրձ, և ինձ զգեցոյց զուրախութիւն։

Digitized by Google

Որպէս սաղմոս ասասցեն քեզ փառք իմ, և այլ մի՛ ես զղջացայց. Տէր Աստուած իմ, յաւիտեան խոստովան եղէց քեզ:

Ալէլուիա. ալէլուիա:

Ընթերցուած յԱռակաց: Իմաստ. Ժ. 9:

Իմաստութիւն զողջիկս իւր փրկեաց ի ցաւոց: Նա փախուցելոյ ի բարկութենէ եղբօրն՝ առաջնորդեաց արդարոյն ի շաւիղս ուղիղս. եցոյց նմա զարքայութիւն Աստուծոյ, և ետ զգիտութիւն սրբոց: Յաջողեաց նմա շահս ի վաստակոց իւրոց. և բազմացոյց զպտուղ նորա: Յագահութեան բռնաւորաց նորա պաշտպանեաց նմա, և մեծացոյց զնա, և պահեաց ի թշնամեաց: Եւ ի դարանակալաց նորա զգուշացաւ, և ի զօրաւոր պատերազմի արար զնա յաղթօղ: Զի գիտասցէ՝ թէ քան զամենայն ինչ զօրաւոր է աստուածպաշտութիւն: Նա զարդարն վաճառեալ՝ ոչ եթող ի ձեռանէ, այլ ի մեղաց փրկեաց զնա. ընդ նմա էջ ի գուբ, և ի կապանս ոչ եթող զնա ի ձեռանէ, մինչև եբեր նմա զաւազան թագաւորութեան, և իշխանութիւն ի վերայ բռնաւորաց նորա: Սուտ եցոյց զբամբասօղս նորա, և ետ նմա զփառսն յաւիտենական: Նա զժողովուրդն սուրբ և զզաւակն անարատ փրկեաց յազգէ նեղչաց: Եմուտ յոգի ծառայի Տեառն, և ընդդէմ դարձաւ թագաւորաց ահաւորաց՝ արուեստիւք և նշանօք: Հատոյց սրբոցն զվարձս վաստակոց նոցա, առաջնորդեաց նոցա ընդ ճանապարհ սքանչելի, եղև նոցա հովանի ի տուէ և բոց աստեղաց ի գիշերի: Անցոյց զնոսա ընդ ծովն կարմիր, և տարաւ զնոսա ընդ ջուրս բազումս: Զթշնամիս նոցա ընկղմեաց, և ի խորոց անդնդոց ած զնոսա ի վեր: Վասն այնորիկ արդարք կողոպտեցին զամբարիշտս, և օրհնեցին Տէր զանուն քո սուրբ. և զձեռն քո որ մարտնչէր ի վերայ նոցա՝ օրհնեցին միանգամայն: 20:

Պօղոսի առաքելոյն ի Թեսաղոնիկեցւոց առաջին թղթոյն է ընթերցուածս: Դ. 12:

Ոչ կամիմ եղբարք, եթէ տգէտք իցէք վասն ննջեցելոցն. զի մի՛ տրտմիցիք որպէս և այլքն որոց ոչ գոյ յոյս: Եթէ հաւատամք՝ եթէ Յիսուս մեռաւ և յարեաւ, նոյնպէս և Աստուած զննջեցեալսն ի ձեռն Յիսուսի ածցէ ընդ



Digitized by Google

նմա։ Բայց զայս ասեմք Տեառն բանիւ, թէ մեք որ կենդանիքս եմք մնացեալք՝ ի գալստեանն Տեառն ոչ ժամանեմք ննջեցելոցն։ Զի ինքն Տէր հրամանաւ՝ ի ձայն հրեշտակապետի և ի փող Աստուծոյ իջանէ յերկնից, և մեռեալք ի Քրիստոս յարիցեն յառաջագոյն։ Ապա և մեք որ կենդանւոյն մնացեալ իցեմք՝ նոքօք հանդերձ յափշտակեսցուք ամպովք ընդ առաջ Տեառն յօդս, և այնպէս յամենայն ժամ ընդ Տեառն լինիցիմք։ Այսուհետև մխիթարեցէք զմիմեանս բանիւքս այսոքիւք։ 17։

Ալէլ. ալէլ. ալէլ։ Եհան զիս ի գբոյ տառապանաց, ի կաւոյ և ի տղմոյ։

### Ալէլուիա, Օրթի

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Յովհաննու։ ԺԱ. 1։

Վասն փառաց Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի.

Եւ էր ոմն հիւանդ Ղազարոս ի Բեթանիայ, ի գեղջէ Մարեմայ և Մարթայի քեռ նորա։ Այս այն Մարիամ էր՝ որ օծ զՏէրն իւղով, և ջնջեաց զոտս նորա հերով իւրով. որոյ եղբայրն Ղազարոս հիւանդ էր։ Առաքեցին առ նա քորքն նորա՝ և ասեն. Տէր, ահաւասիկ զոր դուն սիրէիր՝ հիւանդացեալ է։ Իբրև լուաւ Յիսուս, ասէ. այն հիւանդութիւն չէ ի մահ, այլ վասն փառացն Աստուծոյ. զի փառաւոր լիցի որդի Աստուծոյ այնուիկ։ Եւ սիրէր Յիսուս զՄարթա և զքոյր նորա զՄարիամ և զՂազար։ Իբրև լուաւ թէ հիւանդացեալ է, զտեղի կալաւ անդէն ուր էրն՝ աւուրս երկուս։ Ապա յետ այնորիկ ասէ ցնոսա. եկայք երթիցուք միւսանգամ ի Հրէաստան։ Ասեն ցնա աշակերտքն. Ռաբբի, այժմ ևս խնդրէին զքեզ հրեայքն քարկոծ առնել, և դարձեա՞լ երթաս անդրէն։ Պատասխանի ետ Յիսուս. ո՞չ երկոտասան ժամ է յաւուր. Եթէ ոք գնայ ի տուընջեան՝ ոչ գայթագղի, զի զլոյս աշխարհիս այսորիկ տեսանէ. ապա թէ ոք գնայ ի գիշերի՝ գայթագղի, զի լոյս ոչ գոյ ընդ նմա։ Զայս իբրև ասաց, յետ այսորիկ ասէ ցնոսա. Ղազարոս բարեկամ մեր ննջեաց, այլ երթամ զի զարթուցից զնա։ Ասեն ցնա աշակերտքն. Տէր, եթէ ննջեաց՝ ապա ապրի։ Այլ Յիսուս վասն մահուն նորա ասէր. նոցա այսպէս թուեցաւ՝ թէ վասն ննջելոյ քնոյն ասէ։ Յայնժամ ասէ ցնոսա Յիսուս յայտնապէս. Ղազարոս մեռաւ. և ես ուրախ եմ

Digitized by Google

վասն ձեր, զի դուք հաւատասջիք ինձ, զի ես չէի անդ. բայց արդ եկայք երթիցուք առ նա։ Ասէ Թովմաս՝ անուանեալն երկուորեակ՝ ցաշակերտակիցսն. ոն եկայք՝ և մեք զի ընդ նմա մեռցուք։ Եկն Յիսուս՝ եգիտ զնա չորեքօրեայ ի գերեզմանի։ Եւ էր Բեթանիա մերձ յԵրուսաղէմ, իբրև ապարիսօք հնգետասան։ Բազումք ի հրէից անտի եկեալ էին առ Մարթա և Մարիամ, զի մխիթարեսցեն զնոսա վասն եղբօրն։ Մարթա իբրև լուաւ՝ թէ Յիսուս գայ, ընդ առաջ գնաց նորա. բայց Մարիամ նստէր անդէն ի տան։ Ասէ Մարթա ցՅիսուս. Տէր, եթէ աստ լինեալ էիր, եղբայրն իմ չէր մեռեալ. այլ և արդ գիտեմ, եթէ զոր ինչ խնդրեսցես յԱստուծոյ՝ տացէ քեզ Աստուած։ Ասէ ցնա Յիսուս. յարիցէ եղբայրն քո։ Ասէ ցնա Մարթա. գիտեմ զի յարիցէ ի յարութեան՝ յաւուրն յետնում։ Ասէ ցնա Յիսուս. ես իսկ եմ յարութիւն և կեանք. որ հաւատայ՝ յիս, թէպէտ և մեռանի՝ կեցցէ. և ամենայն որ կենդանի է՝ և հաւատայ յիս, մի՛ մեռցի ի յաւիտեան. հաւատա՞ս այսմիկ։ Ասէ ցնա. այո՛ Տէր՝ ես հաւատացի՝ եթէ դու ես Քրիստոսն Որդի Աստուծոյ, որ յաշխարհ գալոց էիր։ Եւ զայս իբրև ասաց, գնաց կոչեաց զՄարիամ զքոյր իւր լռելեայն՝ և ասէ. վարդապետ եկեալ է և կոչէ զքեզ։ Նա իբրև լուաւ, յարեաւ վաղվաղակի, և եկն առ նա։ Չև ևս էր եկեալ Յիսուս ի գեօղն. այլ էր անդէն ի տեղւոջն՝ ուր ընդ առաջ եղև նմա Մարթա։ Իսկ հրեայքն՝ որ էին ընդ նմա ի տան անդ և մխիթարէին զնա, իբրև տեսին զՄարիամ՝ թէ յարեաւ վաղվաղակի և գնաց, գնացին և նոքա զհետ նորա. համարէին թէ ի գերեզմանն երթայ՝ զի լացցէ անդ։ Իսկ Մարիամ իբրև եկն ուր էրն Յիսուս՝ և ետես զնա, անկաւ առ ոտս նորա և ասէ. Տէր, եթէ աստ էիր դիպեալ՝ ոչ էր մեռեալ եղբայրն իմ։ Յիսուս իբրև ետես զնա զի լայր, և որ ընդ նմա էին հրեայքն՝ լային, խռովեցաւ յոգի իւր իբրև զայրացեալ, և ասէ. ո՞ւր եդիք զնա։ Ասեն ցնա. Տէր, եկ և տես։ Եւ արտասուեաց Յիսուս։ Ասէին հրեայքն. տեսէք որչափ սիրէր զնա։ Կէսքն ի նոցանէ ասէին. ո՞չ կարէր սա, որ եբաց զաչս կուրին, առնել՝ զի և սա մի՛ մեռցի։ Յիսուս դարձեալ զայրացեալ ընդ միտս իւր, գայ ի գերեզմանն. և էր այր մի, և վէմ մի եդեալ ի վերայ նորա։ Եւ ասէ Յի-

սուս. ի բաց արարէք զվէմդ: Ասէ ցնա Մարթա քոյր մեռելոյն. Տէր, արդ հոտեալ իցէ, քանզի չորեքօրեայ է: Ասէ ցնա Յիսուս. ո՞չ ասացի քեզ, եթէ հաւատասցես՝ տեսցես զփառսն Աստուծոյ: Եւ իբրև ի վեր առին զվէմն, Յիսուս ամբարձ զաչս իւր ի վեր, և ասէ. Հայր, գոհանամ զքէն զի լուար ինձ. և ես գիտէի՝ զի յամենայն ժամ լսես ինձ, այլ վասն ժողովրդեանս որ շուրջ կան ասեմ՝ զի հաւատասցեն թէ դու առաքեցեր զիս: Զայս իբրև ասաց, ի ձայն մեծ աղաղակեաց և ասէ. Ղազարէ, արի եկ արտաքս: Եւ ել մեռեալն ոտիւք կապելովք, և ձեռօքն երիզապնդօք, և երեսօքն վարշամակապատօք: Եւ ասէ ցնոսա Յիսուս. լուծէք զդա և թողէք երթալ: Բազումք ի հրէիցն որ եկեալ էին առ Մարեմանս, իբրև տեսին զոր արարն՝ հաւատացին ի նա: Եւ ոմանք ի նոցանէ գնացին առ փարիսեցիս, և պատմեցին նոցա զոր արարն Յիսուս: Ժողովեցին քահանայապետքն և փարիսեցիքն ատեան, և ասեն. զի՞նչ արասցուք. զի այրն այն բազում նշանս առնէ: Եթէ թողումք զնա այնպէս, ամենեքին հաւատան ի նա. և գայցեն Հռոմք՝ և բառնայցեն զազգս մեր և զտեղի: Մի ոմն ի նոցանէ, անուն Կայիափա, որ քահանայապետ էր տարւոյն այնորիկ, ասէ ցնոսա. դուք ոչ ինչ գիտէք, և ոչ բնաւ խորհել խոկ, թէ լաւ է մեզ՝ զի այր մի մեռանիցի ի վերայ ժողովրդեանս, և մի՛ ամենայն ազգս կորիցէ: Զայս ոչ յանձնէ ինչ ասաց, այլ զի քահանայապետ էր տարւոյն այնորիկ, մարգարէացաւ՝ եթէ մեռանելոց էր Յիսուս ի վերայ ազգին. և ոչ ի վերայ ազգին միայն, այլ զի և զորդիսն Աստուծոյ զցրուեալսն ժողովեսցէ ի մի: Ապա յայնմ օրէ խորհուրդ արարին՝ զի սպանցեն զնա: Եւ Յիսուս այնուհետև ոչ եթէ համարձակ շրջէր ի մէջ հրէիցն, այլ գնաց անտի յերկիր մի՝ որ մերձ էր յանապատ, ի քաղաք մի՝ որում անուն էր Եփրայիմ, և անդ լինէր աշակերտօքն հանդերձ: 54:

Երգ. Տէրն յետ առեղծ: Քար. Խնդրեսցուք: Կեցո. Է Բի—: Աշ. Քում ամենազօր և հրաշալի գալստեանդ:

---

Ի ՃԱՇՈՒ ԱՁ. Որ առեղծմամբ: Առաջ է հետ հանգստեան շաբաթին ասա:

---

### ՅԵՐԵԿՈՅԻՆ

Խոնարհեցո և Ապրեցո: Լոյս զուարթ:
Մեսեդի. Օրհնեալ որ գաս: Տէր Աստուած մեր:
Քարոզ Ասասցուք. Յայնժամ: Ես շինեսցեն միաբան և յաւիտեան խաղաղութիւն և առաքելական և մարգարէից և ամենայն ժողովուրդ:

### ՀԱՄԲԱՐՁԻ ԱՁ

Որ վերօրհնիս յաթոռս: Վեց տուն: 310. յորում է սկսանելն տողերեն զմարգարէս, և քանան զխորանն: Յետ Համբարձման քար. Խնդրեսցուք: Կեցո. Յայնժամ: Աղ. Թագաւոր խա:

---

# ԿԻՒՐԱԿԷ. ԱԿ
## ԾԱՂԿԱԶԱՐԴ



Ի ԳԻՇԵՐԻ Պաշտօն հանգստեան. Առաւօտեան ժամերգ:

### ՀԵՏԵՒԱԿ ՇԱՐԱԿԱՆ ԴՁ

ԹԱԳԱՒՈՐ գովեալ քո յաշխարհ. մտեր ի քաղաքն Երուսաղէմ. նստեալ ի վերայ հողեղէն նոր յաւանակի կոչել զհեթանոսս յերկրպագութիւն. ծերքն ոստովք ձիթենեօք. եւ տղայքն ոստովք արմաւենեօք. եւ երամ երամ դասուքն աղաղակէին. ովսաննայ օրհնեալ եկեալ ի յանուն Տեառն: Ցնծացաւ սուրբ Սիոն. բերկրեցան սուրբ եկեղեցիք. եւ խնդութեամբ բազմաւ եկին ընդ առաջ. օրհնէին զգալուստ քո Փրկիչ յաշխարհ:

† Յորժամ եկն Յիսուս յԵրուսաղէմ ի քաղաքն. ընդ առաջ ելին ծերքն ոստովք ձիթենեօք. եւ զԱստուածորդին փառաւորէին: Ի լեառն ձիթենեաց. տարածանէին մանկունքն ընծայնդերձս իւրեանց. եւ ոստս ի ծառոց բերեալ մատուցանէին. Աստուած-

որդւոյն սուրբ Թագաւորին։ Ոստովք և տերևեալ ձիթենեօք. երբայեցւոց մանկունքն օրհնէին զՆա. ուրախ լեր Երուսաղէմ քաղաքդ. և ցընծա Սիոն մայր եկեղեցի։

Զգալուստ քո Քրիստոս այսօր. յԵրուսաղէմ նոր եկեղեցի սուրբ. յաղթական երգով բարեբանեմք ‖ օրհնեալ եկեալ անուամբ Տեառն։ Որ վասն մերոյ փըրկութեան յաւանակի նստիլ յանձն առեր. ընդ մանկունսըն բարեբանեմք օրհնեալ։ Թագաւոր երկնաւոր. զեկեղեցի քո անշարժ պահեա. և զերկրպագուս անուանըդ քո պահեա ի խաղաղութեան։

Ի յարութեան յաւուր գալըստեան փրկչին. տաճարանէին մանկունքն ըղջանդերձս և ‖ անդադար ձայնիւ օրհնէին օրհնեալ եկեալ անուամբ Տեառն։ Ոստս ի ծառոց բերեալ մատուցանէին. Աստուածորդւոյն առ ճանապարհաւն և անդադար։ Ի ծերոց բըղխեալ օրհնութիւն. և ի տղայոց փառաբանութիւն. և անդադար։

Քոր. Եւ ես խաղաղ։ Քահ. Օրհնութիւն և փառք։ Ասա

ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԱՋ

Որ վերօրհնիս յաթոռըս քերովբէից. ի վերայ նըստիլ յաւանակի հաճեցար. ‖ բարեբանեալ որ եկիր ի կեցուցանել։ Ուստի և մեք զյաղթական օրհնութեանցն ըզձայն մատուցանեմք քեզ Թագաւոր փառաց ընդ տղայսն օրհնաբանելով. բարեբանեալ։ Ովսաննա ի բարձունս ալէլուիա. բարեբանեալ եկեալ անուամբ Տեառն ալէլուիա. և օրհնութիւն որ գալոցդ ես անուամբ Տեառն ալէլուիա։

† Այսօր զանըսկիզբըն Բանն որ յաթոռ փառաց ընդ Հօր յերկրի երևեալ տեսաք. քրովբէական ձայնիւ օրհնեսցուք ‖ օրհնեալ եկեալ անուամբ Տեառն։ Այսօր

Digitized by Google

յաւանակ քերովբէ և տըղայք եբրայեցւոց բարբառեն. օրհնութիւն որդւոյ Դաւթի. օրհնեալ:

Այսօր գալով ի Բեթանիա. քո ամենազօր հրամանաւըդ. ձայնեցեր Ղազարու և դողացեալ մահ. դըժոխք պարտեցաւ ապականութիւն լուծաւ || կենդանարար Քրիստոս կեցո ըզմեզ: Այսօր գալով ի Բեթանիա. զքո զաշխարհակեցոյց սուրբ զյարութիւնդ. յառաջագոյն ծանուցեր անապականաբար կոչմամբ զչորեքօրեայն ի թաղմանէ. կենդանարար: Այսօր գալով ի Բեթանիա. եբրայեցւոց մանկունքն ըսքանչացեալ ասէին. զՄարիամ և զեղբայրն ի թաղմանէ յարուցեալ. որդւոյն Մարիամու. կենդանարար:

Կենդանութեանց բաշխող Քրիստոս. ի Բեթանիա եկաւորեալ այսօր. բարեկամին Ղազարու պարգեւէ զկենդանութիւն: Տօնորինաբար արտասուելով ընդ Մարթայի և ընդ Մարիամու. ողբալից էր և որպէս մարդ հարցանէր ուր եդիք ըզՂազարոս: Եւ որպէս զԱստուած բարբառով յարուցանէ ի մեռելոց ըզչորեքօրեայն. և զուգընթաց ձայնին մեռեալն ելն արտաքս անապական:

ՎԱՐ. Որ է լերինն այլակերպեալ. ցուցեր զաստուածային քո զօրութիւնդ. || զքեզ փառաւորեմք յիմանալի լոյս: Որ ըղձառագայթ փառաց քոց ցուցեր. արեգակնակերպ փայլմամբ զարարածըս լուսաւորեցեր. զքեզ: Որ ահագին տեսլեամբ զարհուրեցուցեր զքո զաշակերտսն. ի թմբրութիւն հրաւիրեցին ի սէր աստուածային փառաց քոց. զքեզ:

ՕՐՀ. Զփառաւորեալըն յամենայն արարածոց. և ի ծագաց մինչ ի ծագս երկրի զերկրպագեալն. զմարմնացեալ Բանն ի կուսէն ձայնիւ երգով օրհնեսցուք: Որ

Digitized by Google

դիմեալ գայ յԵդովմայ բարձրացեալ փողով. յարուցեալ ի պատերազմ ընկղմեաց զաներեւոյթն Ամաղէկ. զի-ջեալ բանն ի դըժոխս ձայնիւ երգով օրհնեսցուք:
Ծագումն ի Հօրէ փառակից սուրբ Հոգւոյն կենդանու-թեան ազգի մարդկան որ յարեաւն այսօր ի մեռելոց. զհամբարձեալ բանն ի յերկինս ձայնիւ:

ՀԳ. Որ ի քրովբէական կառսն հանգչիս. այսօր իջեր յերկնից ի դաս առաքելոցն սուրբ Հոգի. ‖ օրհ-նեալ ես թագաւոր անմահ: Որ գընաս ի վերայ թեւոց հողմոց. այսօր ի հրեղէն լեզուս բաժանեալ հանգեար յառաքեալսն սուրբ Հոգի. օրհնեալ: Որ խնամես տես-չութեամբ զքո զարարածս. այսօր եկիր ի հաստատել զեկեղեցի քո սուրբ Հոգի. օրհնեալ:

ՀՆ. Զայն արկեալ կենարարին աստուածային բար-բառովն. առէք եկայք օրհնեալք Հօր իմոյ ժառանգեցէք. պատրաստեալ ձեզ ըզկեանսն ի հանդերձեալ երկրին: Ընդ առաջ ելանել քեզ հաւատով ի յօդըս վերինս. աստուածազգեաց լուսով պայծառացեալ ի դասս ան-մարմնոցն. ի լըսել ըզձայն երանաւէտ կոչմանն: Ընդ աջմէ քումմէ կայցո ընդ իմաստունս սուրբ կուսանսն. ի լուսեղէն առագաստին պայծառացեալ ի դասս անմար-մնոցն. ի ժողովս անդրանկաց գրելոց ի յերկինս:

ՄԾ. Մարմնացեալդ ի կուսէն նախայաւիտեան բանդ. այսօր ի տաճարն եկիր կատարել զօրէնս. վասն փըրկութեան հեթանոսաց: Որ յանարուեստ աթոռ նըստիս բարեբանեալդ ի հրեշտակաց. այսօր ի Սիմէով-նի բառնալով ի գիրկս. որ ընծայեցես ըզմեզ ի կեանսն յաւիտենից: Որ արձակիչդ ես կապելոց պարգեւատու ամենեցուն. այսօր հայցմամբ ծերունւոյն արձակեաս եւ զնա ըզբաղձանմերս ի կապանաց մահու ի կեանսն յաւիտենից:

Իզ. Ի խորանի քում սըրբութեան զոր ընտրեցեր զալըրատեամբըդ քո Քրիստոս. ‖ Ի սմա միաձայնեալ անդաչեմք ըզքեզ. լուր ձայնի աղաչանաց մերոց ընկալ եւ կեցո ըզմեզ: Աստուածային լուսով քո. պայծառ քան զարեգակըն լուսաւորեցեր զքո սուրբ զեկեղեցի. Ի սմա: — Փառք Հօր: Այսօր եւ հրեշտակք ուրախանան ընդ պայծառութիւն քո սուրբ եկեղեցւոյ. Ի սմա: — Այժմ եւ միշտ: Այսօր զուարճացան տիեզերք զալըրատեամբ Աստուածորդւոյն յերուսաղէմ. եւ զոչէին հընչմամբ երգով. օրհնեալ եկեալ անուամբ Տեառն:

Մաղթ. Փառք հրաշափառ գալստեան:
Աւետարան Ծաղկազարդին. Տէր Աստուած մեր:

---

## ՅԱՐԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԴԿ

Որ ի քրովբէական աթոռ ընդ Հօր նըստէիր Բանդ Աստուած. այսօր խոնարհութեամբ նըստար մարմնով նոր յաւանակի ‖ ըզքեզ բարեբանեմք Աստուած հարցըն մերոց: Որ ի սրովբէիցըն սըրբասաց ձայնիւ անդադար օրհնաբանիս. այսօր ի դասուց եբրայեցւոց որդւի Դաւթի փառաբանեցար. ըզքեզ: Որ ի հրակերպիցն երգաբանեալ հընչմամբ ի բարձունս օրհնաբանիս. այսօր ի ծերոց եւ ի տղայոց գովեցար ովսաննա երգով. ըզքեզ:

Գ. Ըզտէր օրհնեցէք ‖ բարձր արարէք ըզնա յաւիտեան: Այսօր ըզգալուստ փըրկչին մերոյ. ցընծութեամբ տօնէ նոր Երուսաղէմ. ժողովուրդք որք էին հեթանոսաց բարձր: Այսօր ընդ մանկանց եբրայեցւոց. զհին աւուրցն եկեալ նոր արքայ ի Սիոն. մանկունքն սուրբ եկեղեցւոյ. բարձր: Այ-

սուր ընդ ծերոցն օրհնաբանից . ուրախութեամբ բարբառնեցէք զանմահ թագաւորն եկեալ . քահանայք հոգեւոր երգով . բարձր արարէք ըզնա յաւիտեան :

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԱԶ

Ուրախ լեր յոյժ դուստր Սիոնի . պայծառացիր Երուսաղէմ զարդարեալ ըզդրունըս քո քաղաքդ Աստուծոյ : Քանզի Քրիստոս որ էն ի յաթոռ փառաց . այսօր մտանէ ի քեզ նստեալ ի վերայ յաւանակի նորոյ : Ծերք եւ տղայք ոստովք ձիթենեօք . միաբանութեամբ երգէին օրհնութիւն որդւոյ Դաւթի օրհնեալ եկեալ անուամբ Տեառն :

Ի—ղ—բերէց —եփ—ր—ն . է Յոյնէն : Երգ . փառք յարութեան : Գիշերի . Դասք լուսեղէն զուարթնոցն սպասէին :

ՈՂՈՐՄԵԱ ԲԿ

Ուրախ լեր եկեղեցի սուրբ . ի զարդարեալն սուրբ Միածնին . ուրախ լեր եւ ցնծա հանդերձ ամենայն սրբովք : Խնդա յոյժ դուստր վերին Սիոնի . ահա թագաւորն քո գայ նստեալ ի յաւանակի նորոյ . արդար եւ փրկիչ փրկէ եւ կեցուցանէ : Զարմացիր եւ բերկրեալ ժողովուրդ Աստուծոյ . մատո զոստըս ծաղկեալըս հաւատով եւ ասա . օրհնեալ որ եկիր ընդ թագաւոր տիեզերաց :

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԲԿ

Զքրիստոս թագաւորն որ էն ի յաթոռ փառաց . տեսաք ի յերկրի նստեալ ի նոր յաւանակի : Ընդ առաջ ելեալ արքային դասք եբրայեցւոցն . ծերքն ոստովք ձիթենեօք եւ տղայքն արմաւենեօք : Միաբանական ձայնիւ գոչէին երգ նոր . բարբառելով զանմահ թագաւորն :

Առաւօտու Երգ Ծաղկազարդին. Այսօր մտանէ Թագաւորն։ Քար. Առաքեալք։ Աղ. Գոհանամք։ Երգ. Սուրբ Աստուած։ Մաղթ. Փրկեա զմեզ։ Քար. Վասն լսելի։ Քահ. Օրհնութիւն և փառք։ Ես եկանէն յարեան տեսլով

ՇԱՐԱԿԱՆ ԱՁ

Որ վերօրհնիս յաթոռս։ 310. Երեք տուն։

ՁՆԷ ՍԱՂՄՈՍ ՂԷ. Է ԲԷ.

ԿՑ. Լերինք ցնծասցեն առաջի Տեառն, զի գայ և հասեալ է Տէր ի դատել զերկիր։

Փխ. Օրհնեցէք զՏէր յօրհնութիւն նոր, զի սքանչելիս արար։

Փրկեաց զնա աջ իւր և բազուկ սուրբ իւր։

Եցոյց Տէր զփրկութիւն իւր, առաջի ազգաց յայտնեաց զարդարութիւն իւր։

Յիշեաց ողորմութեամբ իւրով զՅակոբ, ճշմարտութեամբ իւրով զտունն Իսրայելի. և տեսին ամենայն ծագք երկրի զփրկութիւն Աստուծոյ մերոյ։

Աղաղակեցէք առ Տէր ամենայն երկիր, օրհնեցէք ցնծացէք և սաղմոս ասացէք։

Սաղմոս ասացէք Աստուծոյ մերում օրհնութեամբ, օրհնութեամբ և ի ձայն սաղմոսաց։

Ի ձայն օրհնութեան կածոյ փողոյ, օրհնութեամբ ցնծութեամբ և ի ձայն եղջեր փողոյ, աղաղակեցէք առաջի Թագաւորին Տեառն։

Խռովեսցի ծով լրիւ իւրով, տիեզերք և ամենայն բնակիչք նորա. և գետք ծափս հարցեն ի միասին ձեռամբ։

Լերինք ցնծասցեն առաջի Տեառն, զի գայ և հասեալ է Տէր ի դատել զերկիր։

Դատի զաշխարհս արդարութեամբ, և զժողովուրդս իւր ուղղութեամբ։

Ալէլուիա. ալէլուիա։

Ընթերցուած յերգոց երգոյն Սողոմոնի: Բ. 8:

Ձայն եղբօրորդւոյ իմոյ. ահաւասիկ սա եկն վազելով ի վերայ լերանց՝ խայտալով ի վերայ բլրոց։ Նման է եղբօրորդին իմ այծեման կամ որթուց եղանց ի վերայ լերանց բեթելայ։ Արի եկ մերձաւոր իմ, գեղեցիկ իմ, աղաւնի իմ. զի ահա ձմեռն անց, անձրևք անցին, և

գնացեալ մեկնեցան։ Ծաղիկք երեւեցան յերկրի մերում, ժամանակ եհաս հատանելոյ։ Ձայն տատրակի լսելի եղեւ յերկրի մերում։ Թզենի արձակեաց զբողբոջ իւր. որթք մեր ծաղկեալք ետուն զհոտս իւրեանց։ Արի եկ մերձաւոր իմ, գեղեցիկ իմ, աղաւնի իմ. եկ ընդ հովանեաւ վիմին՝ մերձ առ նախապարիսպն։ Ցոյց ինձ զդէմս քո. լսելի արա ինձ զբարբառ քո. վասն զի ձայն քո քաղցր է, և դէմք քո գեղեցիկ։ Կալարուք մեզ աղուեսունս փոքունս՝ զապականիչս այգեաց. և այգիք մեր ծաղկեսցին։ Եղբօրորդին իմ ինձ՝ և ես նմա. որ հովուէն ի մէջ շուշանաց։ Իջցէ եղբօրորդին իմ ի պարտէզ իւր. և կերիցէ զպտուղս ծառոց իւրոց։ Տեսին զնա դստերք՝ և երանեցին նմա. թագուհիք և հարճք գովեցին զնա։ Ո՛վ է սա՝ որ երեւեալս է իբրեւ զառաւօտ. գեղեցիկ որպէս զլուսին. ընտիր իբրեւ զարեգակն. իբրեւ զհիացումն կարգեալ։ Ի պարտէզս ընկուզաց իջի հայել ի յարմտիս ուղխից. տեսանել թէ ծաղկեալ իցէ որթն. թէ ծաղկեալ իցեն նռնենիք։ Անդ տաց զստինս իմ։

Ընթերցուած յԵսայեայ մարգարէէ: ԿԲ. 11:

Ասացէք դստեր Սիովնի. ահաւասիկ փրկիչ քո հասեալ գայ՝ և ունի զվարձս իւր ընդ իւր. և գործ իւր առաջի երեսաց իւրոց։ Եւ կոչեսցէ զնա ժողովուրդ սուրբ՝ փրկեալ ի Տեառնէ, և դու կոչեսցիս խնդրեալ քաղաք՝ և ոչ լքեալ։ 12։

Պօղոսի առաքելոյն յԵփեսացւոց թղթոյն է ընթերցուածս: Ա. 3։

Օրհնեալ է Աստուած և Հայր Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որ օրհնեաց զմեզ ամենայն հոգևոր օրհնութեամբ յերկնաւորս ի Քրիստոս։ Որպէս ընտրեաց զմեզ նովաւ յառաջ քան զլինելն աշխարհի, լինել մեզ սուրբս և անարատս առաջի նորա սիրով։ Յառաջագոյն սահմանեաց զմեզ յորդեգրութիւն ի ձեռն Յիսուսի Քրիստոսի, ի նոյն. ըստ հաճութեան կամաց իւրոց, ի գովեստ փառաց շնորհաց իւրոց. որով զուարճացոյց զմեզ սիրելեաւն։ Որով ունիմք զփրկութիւն ի ձեռն արեան նորա, զթողութիւն մեղաց ըստ մեծութեան շնորհաց իւրոց. որ առաւելաւ ի մեզ ամենայն իմաստութեամբ և գիտութեամբ։ Եցոյց մեզ զխորհուրդս կամաց իւրոց, ըստ հա-

Digitized by Google

ճութեան իւրում. զոր յառաջագոյն եդ նովաւ, ի տնտեսութիւն լրման ժամանակաց, բովանդակել զամենայն Քրիստոսիւ. որ ինչ յերկինս և որ ինչ յերկրի ի նմին: 10:

Զայնէ– Ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա:

Օրհնեալ որ գաս յանուն Տեառն. և օրհնեցաք զքեզ ի տանէ Տեառն:

## Ալէլուիա, Օրթի

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մարկոսի Ժ. 46:

Վասն գալստեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի.

Եւ գան յԵրիքով. և ընդ ելանելն նորա յԵրիքովէ աշակերտօքն և բազում ժողովրդովք, որդի Տիմէի Բարտիմէոս կոյր նստէր մուրացիկ յանցս ճանապարհի: Իբրև լուաւ թէ Յիսուս Նազովրեցի է, սկսաւ աղաղակել և ասել. որդի Դաւթի Յիսուս, ողորմեաց ինձ: Եւ սաստէին նմա բազումք զի լռեսցէ. և նա առաւել ևս աղաղակէր. որդի Դաւթի, ողորմեաց ինձ: Զտեղի առ Յիսուս, և հրամայեաց կոչել զնա: Կոչեն զկոյրն՝ և ասեն ցնա. քաջալերեաց, արի կոչէ զքեզ: Եւ նորա ընկեցեալ զձորձս իւր, յարեաւ և եկն առ Յիսուս: Պատասխանի ետ նմա Յիսուս և ասէ. զի՞նչ կամիս՝ թէ արարից քեզ. ասէ ցնա կոյրն. Ռաբբունի, զի բացայց: Եւ Յիսուս ասէ ցնա. երթ, հաւատք քո կեցուցին զքեզ: Եւ վաղվաղակի բացաւ, և երթայր զհետ նորա ի ճանապարհին: Եւ յորժամ մերձ եղեն յԵրուսաղէմ, ի Բեթփագէ և ի Բեթանիա մօտ ի լեառն Ձիթենեաց, առաքէ երկուս յաշակերտաց անտի, և ասէ ցնոսա. երթայք դուք ի գեօղ՝ որ ընդդէմ ձեր կայ. և նոյնժամայն իբրև մտանէք ի նա, գտանէք յաւանակ մի կապեալ. յորոյ վերայ ոչ ոք ի մարդկանէ նստաւ, լուծէք զնա և ածէք: Եւ եթէ ոք ասասցէ ձեզ՝ թէ զի՞ լուծանէք զյաւանակդ. ասասջիք՝ թէ տեառն իւրում պիտոյ է. և վաղվաղակի առաքեսցէ զնա այսր: Չոգան և գտին զյաւանակն կապեալ առ դուրս արտաքոյ ի փողոցի անդ, և լուծին զնա: Եւ ոմանք յորոց անդն կային, ասեն ցնոսա. զի՞ գործէք՝ զի՞ լուծանէք զյաւանակդ: Եւ նոքա ասեն ցնոսա որպէս ասացն Յիսուս. և թոյլ ետուն նոցա: Ածեն զյաւանակն առ Յիսուս, և արկանեն ի վերայ նորա հանդերձս, և նստաւ ի վերայ

Նորա։ Եւ բազումք զհանդերձս իւրեանց տարածանէին ի վերայ ճանապարհին, և այլք ոստս ի ծառոց հատանէին՝ և արկանէին զճանապարհաւն։ Եւ որ առաջին և զկնի երթային՝ աղաղակէին և ասէին. ովսաննա Բարձրելոյն. օրհնեալ որ գայդ յանուն Տեառն. օրհնեալ Թագաւորութիւնդ եկեալ հօր մերոյ Դաւթի, խաղաղութիւն յերկինս և փառք ի բարձունս։ Եւ եմուտ Յիսուս յԵրուսաղէմ ի տաճարն, և հայեցաւ շուրջ զամենեքումբք. և զի էր երեկոյացեալ ժամն, ել ի Բեթանիա երկոտասանիւքն հանդերձ։ ԺԱ. 11։

Ցընթեռնուլ աւետարանին բերեն զոստսն և յառեալ Ոստս ի ծառոց հատանէին՝ բաժանեն։ Զկնի աւետարանին սարկաւագն քարոզէ. Եւ ևս խաղաղութեան։ Վասն ի վերուստ։ Եփոխանորդքն զանդաստանն խաչիւ և աւետարանաւ, և օրհնեն շնորհս կոչեն աշխարհի։ Զկնի Քարոզ. Սուրբ խաչիւ. Աղօթ. Պահպանեա։ Եւ է դռանդն յեկեղեցին ոխանին

ՇԱՐԱԿԱՆ ԲԿ

Այսօր ընդ հրակերպեան դասուցն օրհնաբանեն ծերքն մատւք. և տղայքն արմաւենեօք. ‖ Ովսաննա... օրհնեալ եկեալ ի յանուն Տեառն։ Զոր սերովբէքն ծածկաբար ընդունել ոչ բաւէին ի վերայ յաւանակի նորոյ նստեալ բարեբանեցաւ ի տղայոց. Ովսաննա։ Այսօր ընդ ծերոց և ընդ տղայոց օրհնաբանութեանցն վեր երգեմք. Նորոյ արքայիդ եկեալ յԵրուսաղէմ. Ովսաննա։ Օրհնեալ եկեալ անուամբ Տեառն. օրհնեալ որ գալոցդ ես։

Զօրհնեալ եկեալն երիցս ասեն։ Աղօ. Նորաստեղծեալ։ Քար. Խնդրեսցուք։ Կեցո. Յայնժամ։ Աղ. Քում ամենազօր և հրաշալի գալստեանդ։

---

ՑԻՐԵԿՈՑԻ

Ի յինն ժամն ժողովին ի դուռն եկեղեցւոյն. և յետ Հայր մերին անդէն ասեն

## ՍԱՂՄՈՍ ՂԷ. Է ԲԽ

### Կ8. Լերինք ցնծասցեն առաջի Տեառն զի գայ։ 315։

*Ընթերցուած յԱռակաց: Ը. 22։*

Տէր ստացաւ զիս ի սկիզբն ճանապարհաց իւրոց ի գործս իւր. յառաջ քան զյաւիտեանս հաստատեաց զիս։ Ի սկզբանէ յառաջ քան զերկիր առնել։ Եւ նախ քան զանդունդս գործել. և յառաջ քան զբղխել աղբերաց ջուրց։ Եւ նախ քան զլերինս հաստատել. և յառաջ քան զամենայն բլուրս ծնաւ զիս։ Տէր արար զշէնս՝ և զանշէնս. և զեզերս զբնակեալս ի ներքոյ երկնից։ Յորժամ պատրաստէր զերկինս՝ ընդ նմա էի. և մինչ զատուցանէր զաթոռ իւր ի վերայ հողմոց։ Եւ յորժամ զօրացուցանէր զամպս վերինս, յորժամ անսասան դնէր զաղբիւրս ի ներքոյ երկնից։ Ի դնել ծովու զհաստատութիւն իւր. զի ջուրք մի՛ անցցեն ընդ ափն նորա. ի ժամանակի յորում հաստատուն դնէր զհիմունս երկրի։ Եւ էի առ նմա պատշաճեալ. ես էի որով ուրախ լինէր Տէր հանապազ. և ցնծայի առաջի նորա յամենայն ժամ։ Յորժամ զուարճացեալ էր զտիեզերս բովանդակել. և ուրախ լինէր յորդիս մարդկան։ 31։

*Ընթերցուած յԵրեմեայ մարգարէէ։*
*ԲԱՐՈՒՔԱՅ Դ. 36:*

Հայեաց ընդ արևելս Երուսաղէմ. և տես զեկեալ ուրախութիւնն քեզ յԱստուծոյ։ Ահաւասիկ գան որդիք քո զորս յուղարկեցեր. գան ժողովեալք յարևելից մինչև ի մուտս արևու բանիւ սրբոյն. խնդացեալք փառօքն Աստուծոյ։ Մերկեա Երուսաղէմ զհանդերձ սգոյ և ըլկանաց քոց. և զգեցիր զվայելչութիւն փառացն Աստուծոյ յաւիտեան։ Արկ զքև զկրկնոցն արդարութեան յԱստուծոյ, դիր խոյր ի գլուխ քո զփառաց յաւիտենականին։ Զի ցուցցէ Աստուած ի ներքոյ երկնից զամենայն լուսաւորութիւնս քո։ Եւ կոչեսցի քեզ անուն յԱստուծոյ յաւիտեան՝ խաղաղութիւն, արդարութիւն և փառք աստուածպաշտութեան։ Ե. 3։

*Պետրոսի առաքելոյն ի կաթուղիկեայց առաջին թղթոյն*
*է ընթերցուածս։ Ա. 3։*

Օրհնեալ է Աստուած և Հայր Տեառն մերոյ Յիսուսի

Քրիստոսի, որ ըստ բազում ողորմութեան իւրում ծնաւ զմեզ վերստին ի յոյս կենդանի, ի ձեռն յարութեանն Յիսուսի Քրիստոսի ի մեռելոց, յանեղծ և յանարատ և յանթառամ ժառանգութիւնն՝ որ պահեալ է յերկինս ի ձեզ. որ զօրութեամբն Աստուծոյ պահեալ էիք հաւատովք ի պատրաստեալ փրկութիւնն յայտնել ի յետին ժամանակս։ Որով ուրախ լինիջիք, որք այժմ սակաւիկ ինչ ըստ պատշաճի իրացդ տրտմեալ էք ի պէսպէս փորձութիւնս։ Զի հանդէս ձերոյ հաւատոցն առաւել քան զոսկի կորստական՝ պատուական է. որ հրով փորձեալ՝ գտաւ ի գովութիւն և ի փառս և ի պատիւ ի յայտնութեանն Յիսուսի Քրիստոսի։ Զոր ոչն տեսէք՝ և սիրեցէք. ընդ որ այժմ ոչ հայեցեալք, բայց հաւատացէք. և ուրախ էք անճառ և փառաւորեալ խնդութեամբն. ընկալեալ զկատարումն հաւատոցն ձերոյ՝ զոգւոցն փրկութիւն։ 9։

Ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա։ Տէր ի տաճար սուրբ իւրում. Տէր յերկինս յաթոռ իւրում։

## Ալէլուիա, Օրթի

### Սրբոյ Աւետարանին որ ըստ Ղուկասու։ ԺԹ. 29։

### Վասն գալստեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի.

Եւ եղև իբրև մերձեցաւ ի Բեթփագէ և ի Բեթանիա մօտ ի լեառն որ կոչի Ձիթենեաց, առաքեաց երկուս յաշակերտացն իւրոց և ասէ։ Երթայք դուք ի գեօղն՝ որ հանդէպ մեր կայ. յոր իբրև մտանէք՝ գտանիցէք յաւանակ կապեալ, յորում ոք ի մարդկանէ երբէք ոչ նստաւ. լուծէք զնա և ածէք։ Եւ եթէ ոք հարցանիցէ զձեզ՝ եթէ ընդէ՞ր լուծանէք, այսպէս ասասջիք ցնա, թէ տեառն իւրում պիտոյ է։ Իբրև չոգան որ առաքեցանն, գտին որպէս ասացն ցնոսա, կայր յաւանակն։ Եւ մինչդեռ լուծանէին զյաւանակն, ասեն տեարքն նորա ցնոսա. զի՞ լուծանէք զյաւանակդ։ Եւ նոքա ասեն. տեառն իւրում պիտոյ է։ Եւ ածին զնա առ Յիսուս, և արկին զնովաւ հանդերձս, և հեծուցին զՅիսուս։ Եւ մինչդեռ երթայր, զհանդերձս իւրեանց տարածանէին զճանապարհաւն։ Եւ իբրև այն ինչ մերձ եղև ի զառ ի վայր լերինն Ձիթենեաց, սկսաւ ամենայն բազմութիւն աշակերտացն ուրախութեամբ օրհնել զԱստուած ի ձայն մեծ՝ վասն ամե-

նայն եղելոց զօրութեանցն զոր տեսին, և ասէին. օրհնեալ որ գայ թագաւորդ յանուն Տեառն. խաղաղութիւն յերկինս, և փառք ի բարձունս ։ Եւ ոմանք ի փարիսեցւոցն յամբոխէ անտի ասեն ցնա. վարդապետ, սաստեա աշակերտացդ քոց ։ Պատասխանի ետ և ասէ. ասեմ ձեզ, զի եթէ դոքա լռեսցեն, քարինքդ աղաղակեսցեն ։ Եւ իբրև մերձեցաւ, տեսեալ զքաղաքն՝ ելաց ի վերայ նորա, և ասէ. եթէ գիտէիր դու գոնէ յաւուրս յայսմիկ զխաղաղութիւնն քո, բայց այժմ ծածկեցաւ յերեսաց քոց ։ Զի եկեսցեն աւուրք ի վերայ քո, և պատեսցեն զքեւ թշնամիք քո պատնէշ. և պաշարեսցեն զքեզ, և նեղեսցեն զքեզ յամենայն կողմանց. և յատակեսցեն զքեզ, և զորդիս քո ի քեզ. և ոչ թողուցուն քար ի քարի վերայ յամենայնի ի քեզ. փոխանակ զի ոչ ծանեար զժամանակ այցելութեան քո ։ Եւ մտեալ ի տաճարն սկսաւ հանել զաղաւնէվաճառսն և զգնօղս, և զսեղանս հատավաճառացն ցրուեաց ։ Եւ ասէ ցնոսա. գրեալ է, և եղիցի տուն իմ տուն աղօթից, և դուք արարէք զդա այրս աւազակաց ։ Եւ ուսուցանէր զնոսա հանապազ ի տաճարին. իսկ քահանայապետքն և դպիրք և գլխաւորք ժողովրդեանն խնդրէին զնա կորուսանել ։ Եւ ոչ գտանէին թէ զինչ արասցեն. զի ժողովուրդն ամենայն կախեալ կային զնմանէ ի լսել ։ 48 ։

**Եւ ելանեն խնկաւ և աւետարանաւ և ամենայն զօրքօք ի դուռս յանդաստանն՝ ասելով**

ՇԱՐԱԿԱՆ ԱԶ

Որ վերօրհնիս յաթոռ քերովբէից ։ 310 . Երգ տօն ։

## Զկնջ Օրթի

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի ։ ԻԱ . 1 ։

Վասն գալստեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի .

Իբրև մօտ եղեն յԵրուսաղէմ, և եկին ի Բեթփագէ մերձ ի լեառն ձիթենեաց, յայնժամ Յիսուս արձակեաց երկուս յաշակերտացն իւրոց ։ Եւ ասէ ցնոսա . երթայք ի գեօղդ՝ որ առաջի ձեր է, և անդէն գտանէք էշ կապեալ՝ և յաւանակ ընդ նմին, լուծէք ածէք ինձ ։ Եւ եթէ ոք ասիցէ ինչ ձեզ, ասասջիք, եթէ տեառն իւրեանց պիտոյ են . և վաղվաղակի առաքեսցէ զնոսա ։ Բայց այս



Digitized by Google

ամենայն եղև, զի լցցի բան մարգարէին՝ որ ասէ. Ա-
սացէք դստեր Սիովնի. ահա թագաւոր քո գայ քեզ հեզ
և հեծեալ յէշ և յաւանակի իշոյ: Գնացին աշակերտքն,
և արարին որպէս հրամայեաց նոցա Յիսուս: Եւ ածին
զէշն և զյաւանակն, և արկին զնոքօք ձորձս իւրեանց.
և նստաւ ի վերայ նոցա: Եւ բազում ժողովուրդք տա-
րածեցին զհանդերձս իւրեանց ի ճանապարհին, և այլք
հատանէին ոստս ի ծառոց և տարածանէին ի ճանապար-
հին: Եւ ժողովուրդքն որ առաջի և զկնի երթային՝ ա-
ղաղակէին և ասէին. օրհնութիւն որդւոյ Դաւթի, օրհ-
նեալ որ գայ յանուն Տեառն. օրհնութիւն ի բարձունս: 9:

ՇԱՐԱԿԱՆ ԴՁ

Թագաւոր գոլով քո յաշխարհ: 309. Երէ+ տ—ն:

## Զկնի Օրթի

Սրբոյ Աւետարանին որ ըստ Մարկոսի: ԺԱ. 1:
Վասն գալստեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի.

Եւ յորժամ մերձ եղեն յԵրուսաղէմ ի Բեթփագէ և ի
Բեթանիա մօտ ի լեառն Ձիթենեաց, առաքէ երկուս յա-
շակերտաց անտի, և ասէ ցնոսա. երթայք դուք ի գեօղ՝
որ ընդդէմ ձեր կայ. և նոյնժամայն իբրև մտանէք ի
նա, գտանէք յաւանակ մի կապեալ. յորոյ վերայ ոչ ոք
ի մարդկանէ նստաւ, լուծէք զնա և ածէք: Եւ եթէ ոք
ասասցէ ձեզ՝ թէ զի՞ լուծանէք զյաւանակդ, ասասջիք՝
թէ տեառն իւրում պիտոյ է. և վաղվաղակի առաքեսցէ
զնա այսր: Չոքան և գտին զյաւանակն կապեալ առ
դուրս արտաքոյ ի փողոցի անդ, և լուծին զնա: Եւ ո-
մանք յորոց անդն կային, ասեն ցնոսա. զի՞ գործէք՝ զի՞
լուծանէք զյաւանակդ: Եւ նոքա ասեն ցնոսա որպէս
ասացն Յիսուս. և թոյլ ետուն նոցա: Ածեն զյաւանակն
առ Յիսուս, և արկանեն ի վերայ նորա հանդերձս, և
նստաւ ի վերայ նորա: Եւ բազումք զհանդերձս իւրեանց
տարածանէին ի վերայ ճանապարհին, և այլք ոստս ի
ծառոց հատանէին՝ և արկանէին զճանապարհաւն: Եւ որ
առաջին և զկնի երթային՝ աղաղակէին և ասէին. ով-
սաննա բարձրելոյն. օրհնեալ որ գաս յանուն Տեառն.
օրհնեալ թագաւորութիւնդ եկեալ հօր մերոյ Դաւթի,
խաղաղութիւն յերկինս և փառք ի բարձունս: 10:

Digitized by Google

ՇԱՐԱԿԱՆ ԴՁ

Յորժամ եկն Յիսուս յԵրուսաղէմ : 309 . Երեք տուն :

Ձ՛նէ Օրթի

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու : ԺԸ . 31 :

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Առեալ զերկոտասանսն առանձինն՝ ասէ ցնոսա. ահաւասիկ ելանեմք յԵրուսաղէմ. և կատարեսցին ամենայն գրեալքն մարգարէիւք վասն որդւոյ մարդոյ : Զի մատնեսցի հեթանոսաց և կատակեսցի, և հարկանիցեն և սպանանիցեն զնա, և յերիր աւուր յարիցէ : Եւ նոքա ոչ ինչ իմացան յայնցանէ, այլ էր բանն ծածկեալ ի նոցանէ, և ոչ գիտէին զասացեալսն : Եւ եղև ի մտանելն նորա յԵրիքով՝ կոյր ոմն նստէր առ ճանապարհաւն մուրացիկ : Իբրև լուաւ զանցանել ժողովրդեանն, հարցանէր՝ թէ զի՞նչ իցէ այն : Եւ պատմեցին նմա, թէ Յիսուս Նազովրեցի անցանէ : Աղաղակեաց և ասէ. Յիսուս որդի Դաւթի, ողորմեաց ինձ : Եւ որ առաջին երթային՝ սաստէին նմա զի լռեսցէ . և նա ևս առաւել աղաղակէր. որդի Դաւթի, ողորմեաց ինձ : Զտեղի առ Յիսուս, և հրամայեաց ածել զնա առ իւր. և իբրև մերձ եղև առ նա, եհարց զնա և ասէ . զի՞նչ կամիս դու՝ զի արարից քեզ : Եւ նա ասէ . Տէր, զի բացցին աչք իմ՝ և տեսից : Եւ Յիսուս ասէ ցնա . հայեաց, հաւատք քո կեցուցին զքեզ : Եւ առժամայն ետես, և երթայր զհետ նորա և փառաւոր առնէր զԱստուած. և ամենայն ժողովրդեանն տեսեալ՝ տայր օրհնութիւն Աստուծոյ : Եւ մտեալ շրջէր ընդ Երիքով : Եւ ահա այր մի անուն կոչեցեալ Զակքէոս . և նա էր մաքսապետ, և ինքն մեծատուն : Եւ խնդրէր տեսանել՝ թէ ո՞վ իցէ Յիսուս, և ոչ կարէր ի բազմութենէն, զի կարճ էր հասակաւ : Եւ ընթացեալ յառաջս՝ ել ի ժանտաթզենին զի տեսանիցէ զնա. քանզի ընդ այն խոկ անցանելոց էր : Իբրև եկն ի տեղին, հայեցաւ ի վեր Յիսուս՝ և ասէ ցնա . Զակքէ, փութա էջ այտի, զի այսօր ի տան քում արժան է ինձ ագանել : Փութացաւ և էջ՝ և ընկալաւ զնա ուրախութեամբ : Իբրև տեսին ամենեքին, տրտնջէին և ասէին՝ թէ առ առն մեղաւորի եմուտ լուծանել : Եկն եկաց Զակքէոս և ասէ ցՏէր . Տէր ահա զկէս ընչից իմոց տաց աղքատաց . և

Digitized by Google

եթէ զոք զրկեցի, հատուցից չորեքկին: Եւ ասէ ցնա Յիսուս. այսօր եղև փրկութիւն տանս այսմիկ, քանզի և սա որդի Աբրահամու է: Զի եկն որդի մարդոյ խնդրել և կեցուցանել զկորուսեալն: Եւ մինչդեռ նոքա զայն լսէին, յաւել առակ մի և ասէ, վասն մերձենալոյ նորա յԵրուսաղէմ, և համարելոյ նոցա թէ առժամայն յայտնելոց է արքայութիւն Աստուծոյ: Ասէ. այր ոմն ազնուական գնաց յաշխարհ հեռի՝ առնուլ իւր թագաւորութիւն, և դառնալ: Եւ կոչեցեալ զծառայս իւր՝ ետ նոցա տասն մնաս, և ասէ ցնոսա. յարդեցէք զայդ՝ մինչև եկից: Եւ քաղաքացիքն նորա ատէին զնա, առաքեցին հրեշտակս զկնի նորա՝ և ասեն, թէ ոչ կամիմք թագաւորել դմա ի վերայ մեր: Եւ եղև դառնալ նմա՝ առեալ զթագաւորութիւնն. և կոչեաց զծառայսն՝ որոց տուեալ էր զարծաթն, զի գիտասցէ թէ ո՛ զինչ շահեցաւ: Եկն առաջինն և ասէ. տէր, մնասն քո՝ տասն մնաս արար: Եւ ասէ ցնա. ազնիւ ծառայ և բարի, զի ի փոքու հաւատարիմ եղեր, լիջիր իշխանութիւն ունել ի վերայ տասն քաղաքի: Եկն երկրորդն և ասէ. մնասն քո արար հինգ մնաս: Ասէ ցնա. և դու լիջիր ի վերայ հինգ քաղաքաց: Եկն միւսն և ասէ. տէր, ահա մնասն քո զոր ունէի, ծրարեալ ի վարշամակի. երկնչէի ի քէն, զի այր ստամբակ ես. բառնաս՝ զոր ոչ եդիր, և հնձես՝ զոր ոչ սերմանեցեր: Եւ ասէ ցնա. ի բերանոյ քումմէ դատեցայց զքեզ, ծառայ անհաւատ. գիտէիր թէ ես այր մի ստամբակ եմ, բառնամ՝ զոր ոչ եդի, և հնձեմ՝ ուր ոչ սերմանեցի: Եւ ընդէ՞ր ոչ ետուր զարծաթն իմ ի սեղանաւորս, և եկեալ ես տոկոսեօք պահանջէի: Եւ ասէ ցպաստաւորսն. առէք ի դմանէ զմնասն, և տարայք տուք այնմ՝ որ ունիցի զտասն մնասն: Եւ ասեն ցնա. տէր, ունի տասն մնաս: Ասեմ ձեզ. եթէ ամենայնի որ ունիցի, տացի. և յայնմանէ որ ոչն ունիցի, և զոր ունիցին բարձցի ի նմանէ: Բայց զթշնամիսն իմ զայնոսիկ, որ ոչն կամէին զիս թագաւորել ի վերայ նոցա, ածէք այսր և սպանէք առաջի իմ: Եւ իբրև զայս ասաց, գնաց յառաջ՝ ելանել յԵրուսաղէմ: ԺԹ. 28:

ՇԱՐԱԿԱՆ ԴՋ

Զգալուստ քո Քրիստոս այսօր: 310. Երեք տուն:

## Ջնջ Օրթի

Սրբոյ Աւետարանին որ ըստ Յովհաննու: ԺԲ. 12:
Վասն գալստեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի.

Ի վաղիւ անդր ժողովուրդ բազում որ եկեալ էր ի տօնն, իբրեւ լուան թէ գայ Յիսուս յԵրուսաղէմ, առին ոստս արմաւենեաց՝ եւ ելին ընդ առաջ նորա. աղաղակէին եւ ասէին. ովսաննա, օրհնեալ որ գայ յանուն Տեառն՝ թագաւորդ Իսրայէլի: Եւ գտեալ Յիսուսի էշ մի, նստաւ ի վերայ նորա. որպէս եւ գրեալ է. Մի՛ երկնչիր, դուստր Սիովնի, ահաւասիկ թագաւոր քո գայ նստեալ ի վերայ յաւանակի իշոյ: Եւ զայն ինչ ոչ գիտացին աշակերտքն նորա զառաջինն, այլ յորժամ փառաւորեցաւ Յիսուս, յայնժամ յիշեցին եթէ այն էր որ գրեալն էր վասն նորա, եւ զայն արարին նմա: Եւ ժողովուրդն վկայէր՝ որ էր ընդ նմա, թէ զՂազար կոչեաց եւեթ ի գերեզմանէն եւ յարոյց զնա ի մեռելոց: Եւ վասն այնորիկ ընդ առաջ եկն նմա ժողովուրդն, զի լուան եթէ զայն նշանս արարեալ էր նորա: Իսկ փարիսեցիքն ասէին ընդ միմեանս. տեսանէք՝ զի ոչ ինչ օգտիք. ահաւասիկ աշխարհ ամենայն զկնի նորա գնաց: Էին անդ ոմանք եւ հեթանոսք յելելոցն անդր, զի երկիր պագանիցեն ի տօնին: Նոքա մատեան առ Փիլիպպոս՝ որ ի Բեթսայիդայ Գալիլեացւոցն էր, աղաչէին զնա եւ ասէին. տէր, կամիմք զՅիսուս տեսանել: Գայ Փիլիպպոս եւ ասէ ցԱնդրէաս. Անդրէաս եւ Փիլիպպոս ասեն ցՅիսուս: Եւ Յիսուս պատասխանի ետ նոցա եւ ասէ. եհաս ժամ զի փառաւորեսցի որդի մարդոյ: 23:

ՇԱՐԱԿԱՆ ԴԶ

Ի յարութեան յաւուր գալստեան: 310. Երգ+ տուն:

ՋՆՋ ՍԱՂՄՈՍ Դ. Յայնի:

ԿՑ. Նշանեցաւ առ մեզ լոյս երեսաց քոց. եւ ետուր ուրախութիւն սրտից մերոց:

Փխ. Ի կարդալ իմում լուաւ ինձ Աստուած ըստ արդարութեան. ի նեղութեան իմ անձուկ արարեր. ողորմեա ինձ, եւ լուր աղօթից իմոց:

Որդիք մարդկան մինչեւ յե՞րբ էք խստասիրտք. ընդէ՞ր սիրէք զունայնութիւն, եւ խնդրէք զստութիւն:

Digitized by Google

Ծանիրուք զի սքանչելիս արար Տէր սրբոյ իւրում. և Տէր լուիցէ ինձ ի կարդալ իմում առ նա ։

Բարկանայք և մի՛ մեղանչէք. զոր ինչ ասէք ի սիրտս ձեր, յանկողինս ձեր զղջացարուք ։

Մատուցէք պատարագս արդարութեան, և յուսացարուք ի Տէր ։

Բազումք ասէին, թէ ո՛ ցուցցէ մեզ զբարութիւն Տեառն. Նշանեցաւ առ մեզ լոյս երեսաց քոց. և ետուր ուրախութիւն սրտից մերոց ։

Ի պտղոյ ցորենոյ, գինւոյ և ձիթոյ իւրեանց լցուցեր զնոսա ։

Խաղաղութեամբ յայս և ի սոյն ննջեսցուք և զարթիցուք. զի դու Տէր միայն առանձին յուսով քով բնակեցուցեր զմեզ ։

## Ալէլուիա, Օրթի

Սրբոյ Աւետարանին որ ըստ Մատթէոսի ։ ԻԴ. 27 ։
Տէրն մեր Յիսուս Քրիստոս ասէ.

Զի որպէս փայլակն՝ որ ելանէ յարևելից և երևի մինչև յարևմուտս, այնպէս եղիցի գալուստն որդւոյ մարդոյ ։ Զի ուր դիէ՛ն իցէ, անդր ժողովեսցին արծուիք ։ Վաղվաղակի յետ նեղութեան աւուրցն այնոցիկ՝ արեգակն խաւարեսցի, և լուսին ոչ տացէ զլոյս իւր, և աստեղք անկցին յերկնից և զօրութիւնք երկնից շարժեսցին ։ Եւ ապա երևեսցի նշան որդւոյ մարդոյ յերկինս, և յայնժամ կոծեսցին ամենայն ազգք երկրի և տեսցեն զորդի մարդոյ եկեալ ի վերայ ամպոց երկնից զօրութեամբ և փառօք բազմօք ։ Եւ առաքեսցէ զհրեշտակս իւր փողով մեծաւ, և ժողովեսցեն զընտրեալս նորա ի չորից հողմոց՝ ի ծագաց երկնից մինչև ի ծագս նոցա ։ Ի թզենւոյ անտի ուսարուք զառակն. զի յորժամ նորա ոստքն կակղասցին և տերևն ցցուիցի, գիտէք թէ մերձ է ամառն ։ Նոյնպէս և դուք յորժամ տեսանիցէք զայս ամենայն. գիտասջիք թէ մերձ է ի դուրս ։ Ամէն ասեմ ձեզ՝ եթէ ոչ անցցէ ազգս այս, մինչև այս ամենայն եղիցի ։ Երկինք և երկիր անցցեն, և բանք իմ մի՛ անցցեն ։ 35 ։

Աղ. Սրկ. Եւ ես խաղաղութեան ։ Վասն ի վերուստ ։
Եւ փէսանեսցեն զանդրանկանն, և օրհնեն զզօրս կողմն [illegible] ։

Զինի Քար. Սուրբ խաչիս ։ Աղ. Պահպանեա ։

Եւ է դառնալն յեկեղեցին՝ Սարկաւագն քարոզէ. Եւ ևս խաղաղութեան: Քահ. Օրհնութիւն և փառք:

## ՍԱՂՄՈՍ ՁԵ

Խոնարհեցո Տէր զունկն քո և լուր ինձ, զի աղքատ և տնանկ եմ ես:

Պահեա զանձն իմ սուրբ, Տէր. և փրկեա զծառայս քո Աստուած իմ, որ ի քեզ յուսացայ:

Ողորմեա ինձ Տէր, զի առ քեզ աղաղակեցի զօրհանապազ. ուրախ արա զանձն ծառայի քո, զի առ քեզ Տէր համբարձի զանձն իմ:

Զի դու Տէր քաղցր և ուղիղ ես. բազումողորմ առ ամենեսեան, որք կարդան առ քեզ:

Ունկն դիր Տէր աղօթից իմոց, և նայեաց ի ձայն խնդրուածոց իմոց:

Յաւուր նեղութեան իմոյ կարդացի առ քեզ և լուար ինձ:

## ՇԱՐԱԿԱՆ ԲԿ

Ուրախ լեր եկեղեցի սուրբ. ի գալստեան սուրբ Միածնին. ուրախ լեր եւ ցնծա հանդերձ ամենայն որդւովք:

### Երեցս կցնեալ: Ազդ

Ոչ ոք է նման քեզ յաստուածս Տէր. և ոչ ոք է որպէս զգործս քո:

Զամենայն ազգս զոր արարեր, եկեսցեն և երկիր պագցեն առաջի քո Տէր, և փառաւոր արասցեն զանուն քո յաւիտեան:

Մեծ ես դու Տէր, և առնես սքանչելիս, և դու միայն ես Աստուած:

Առաջնորդեա ինձ ի ճանապարհի քում, և գնացից ի ճշմարտութեան քում. և ուրախ եղիցի սիրտ իմ երկնչել յանուանէ քումմէ:

Խոստովան եղէց առ քեզ Տէր Աստուած իմ. բոլորով սրտիւ իմով փառաւոր արարից զանուն քո յաւիտեան:

Մեծ եղև ի վերայ իմ ողորմութիւն քո, և փրկեցեր զանձն իմ ի դժոխոց ներքնոց:

ՇԱՐԱԿԱՆ ԲԿ

Խընդա յոյժ դուստըր վերին Սիովնի. ահա թա-գաւոր քո գայ նըստեալ ը յաւանակի նորոյ. արդարը-մու փըրկիչ փըրկէ եւ կեցուցանէ։

Եւէջ կցիւրդ։ Ալդ

Աստուած, անօրէնք յարեան ի վերայ իմ, և ժողովք հզօրաց խնդրեցին զանձն իմ. և ոչ համարեցան զքեզ Աստուած առաջի իւրեանց։
Այլ դու Տէր Աստուած իմ, գթած ես և ողորմած, երկայնամիտ, բազումողորմ և ճշմարիտ. նայեաց առ իս, և ողորմեա ինձ։
Տուր զօրութիւն ծառայի քո. կեցո զորդի աղախնոյ քո, և արա առ իս նշան բարութեան։
Տեսցեն ատելիք իմ և ամաչեսցեն, զի դու Տէր օգնեցեր ինձ և մխիթարեցեր զիս։
Փառք Հօր և Որդւոյ։ Այժմ և միշտ։

ՇԱՐԱԿԱՆ ԲԿ

Զըւարճացիր եւ բերկրեա ժողովուրդ Աստուծոյ. մատո զուստըս ծաղկեալըս հաւատով եւ ասա. օրհնեալ որ եկիրըդ թագաւոր տիեզերաց։

Եւէջ կցիւրդ։

Եւ ասա Մաղթ. փառք քեզ Աստուած։ Քր. Եւ ևս խաղ։ Քահ. Օրհնութիւն։

ՍԱՂՄՈՍ ՃԼԹ

Ապրեցո զիս Տէր ի մարդոյ չարէ. յառնէ անիրաւէ փրկեա զիս։
Խորհեցան զանօրէնութիւն ի սիրտս իւրեանց. զօր ամենայն պատրաստեցան ի պատերազմ։
Սրեցին զլեզուս իւրեանց որպէս զօձի, և թոյնք իժից ի ներքոյ շրթանց նոցա։
Պահեա զիս Տէր ի ձեռաց մեղաւորի, և ի մարդոյ չարէ փրկեա զիս։

Digitized by Google

Խորհեցան խափանել զգնացս իմ. թաքուցին ամբարտաւանք զորոգայթ ինձ։

Լարս ձգեցին որոգայթ ոտից իմոց. շուրջ զշաւղօք իմովք եդին ինձ զգայթակղութիւն։

Ասացի Տէր Աստուած իմ ես դու. ունկն դիր Տէր ձայնի աղօթից իմոց։

Տէր Տէր զօրութիւն փրկութեան իմոյ. հովանի գլխոյ իմոյ յաւուր պատերազմի։

Մի՛ մատներ զիս Տէր ի ցանկութիւն մեղաւորաց, ոյք խորհեցան վասն իմ ընդ վայր հարկանել զիս։

Զի մի՛ երբեք բարձրասցին, և խորհուրդք նոցա մի՛ կատարեսցին. վախճան կատարածի նոցա վաստակ շրթանց իւրեանց ծածկեսցէ զնոսա։

Արկցես ի վերայ նոցա զկայծակունս հրոյ, և կործանեսցես զնոսա. ի տառապանաց մի՛ կարասցեն կեալ։

Մարդոյ լեզուանւոյ մի՛ յաջողեսցի ի վերայ երկրի. զայր մեղաւոր չարիք իւր որսասցեն ի կորուստ։

ՇԱՐԱԿԱՆ ԲԿ

Զքրիստոս թագաւորն որ էն ի յաթոռ փառաց. տեսաք ի յերկրի նստեալ ի նոր յաւանակի։

Նըէջա կչնեա։ Աղա

Ծանեայ, զի առնես Տէր զդատաստանս աղքատի, և զիրաւունս տնանկի։

Արդարք գոհասցեն զանուանէ քումմէ, և բնակեսցին ուղիղք առաջի երեսաց քոց։

Տէր կարդացի առ քեզ, և լուր ինձ. նայեաց ի ձայն աղօթից իմոց ի կարդալ իմում առ քեզ։

Ուղիղ եղիցին աղօթք իմ որպէս խունկ առաջի քո Տէր. համբարձումն ձեռաց իմոց պատարագ երեկոյի։

Դիր Տէր պահապան բերանոյ իմոյ, և դուռն ամուր շրթանց իմոց, զի մի՛ խոտորեսցի սիրտ իմ բանիւ չարութեան։

Ի պատճառել զպատճառս մեղաց ընդ մարդս՝ որք գործեն զանօրէնութիւն. և ոչ եղէց կցորդ ընտրելեաց նոցա։

Խրատեսցէ զիս արդարն ողորմութեամբ, և յանդիման արասցէ. իւղ մեղաւորի մի՛ օծցէ զգլուխ իմ, այլ աղօթք իմ ի կամս նորա։

Digitized by Google

Արգելան մերձ առ վիմին դատաւորք նոցա. լուիցեն բանից իմոց և քաղցրացին։

Որպէս թանձրութիւն հողոյ զի սփռեալ է ի վերայ երկրի. ցրուեցին ոսկերք նոցա մերձ ի դժոխս։

Առ քեզ Տէր Տէր են աչք իմ, ի քեզ յուսացայ. մի՛ հաներ զհոգի յինէն։

Պահեա զիս յորոգայթէ, որ թագուցաւ ինձ. ի գայթակղութենէ գործողին զանօրէնութիւն։

Անկցին ի ցանցս նոցա մեղաւորք. միայն եմ ես՝ մինչև անցից։

ՇԱՐԱԿԱՆ ԲԿ

Ընդ առաջ ելեալ արքային դասք եբրայեցւոցն. ծերքն ոստովք ձիթենեօք եւ տղայքն արմաւենեօք։

Երիցս կրկնեա։ Աղա

Ձայնիւ իմով ես առ Տէր կարդացի, ձայնիւ իմով զՏէր աղաչեցի։

Սփռեցից առաջի Տեառն զաղօթս իմ, և զնեղութիւնս իմ առաջի նորա պատմեցից։

Ի նուաղել յինէն հոգւոյ իմոյ՝ դու Տէր ծանեար զշաւիղս իմ. ի ճանապարհ յոր և գնայի, թագուցաւ ինձ որոգայթ։

Հայէի յաջմէ տեսանէի, և ոչ ոք ճանաչէր զիս. կորեաւ յինէն փախուստ իմ, և ոչ գտաւ խնդրող անձին իմոյ։

Աղաղակեցի առ քեզ Տէր և ասացի. դու ես յոյս և բաժին իմ յերկրին կենդանեաց։

Նայեաց Տէր յաղօթս իմ, զի ես խոնարհ եղէ յոյժ. ապրեցո զիս ի հալածչաց իմոց, զի հզօրք եղեն քան զիս։

Տէր հան ի բանտէ զանձն իմ. գոհանամ զանուանէ քումմէ։

Եւ քեզ սպասեն արդարք, մինչև հատուցես։

Փառք Հօր և Որդւոյ։ Այժմ և միշտ։

ՇԱՐԱԿԱՆ ԲԿ

Միաբանական ձայնիւ գոչէին երգ նոր. բարեբանելով զանըման թագաւորն։ Երիցս կրկնեա։

Եւ ասա Մաղթ. Օրհնեալ Տէր, որ բնակեալդ ես:

ՄԽՍԽԴԻ

Օրհնեալ որ գաս յանուն Տեառն, օրհնեալ որ գա-
լոց ես:
Տէր Աստուած մեր երևեցաւ մեզ. արարէք տօնս ու-
րախութեան կանխաւ մինչև յանկիւնս սեղանոյ:

Քարոզ Ասասցուք:

ՀԱՄԲԱՐՁԻ ԲԿ

Այսօր ընդ հրակերպեան դասուցն: 318:
Աղօ Քար. Վասն խաղ: Աղ. Հայր գթած: Զկ Հայր մեր:

---

## Կ Ա Ր Գ

Դռնբացի մեծի Ծաղկազարդի երեկոյին ըստ խորհրդա-
ծութեանն, որ կատարի ի սուրբ քաղաքն Երուսաղէմ:

Զկնի Հայր մերին շփեցողանեն զփողխոլողուն, եթէ լինի. կամ
ղէ է ղոփուսսոր ժոհոնայէցն: Եւ ֆոն է դոսոն եկեղեցւոյն, ոս-
նելով ժոհոնայէն է յետն ղոսոլբ խոսն: Եւ դնէ դոսոն եկեղեցւոյն:

Եւ ասէն ՍԱՂՄՈՍ ՃԺԷ. է Բխ:

կ8. Օրհնեալ որ գալոց ես անուամբ Տեառն, և օր-
հնեցաք զքեզ ի տանէ Տեառն:
Փխ. Խոստովան եղերուք Տեառն՝ զի բարի է, զի յա-
ւիտեան է ողորմութիւն Նորա:
Ասասցէ տունն Իսրայէլի՝ զի բարի է, զի յաւիտեան
է ողորմութիւն Նորա:
Ասասցէ տունն Ահարոնի՝ զի բարի է, զի յաւիտեան
է ողորմութիւն Նորա:
Ասասցեն երկիւղածք Տեառն՝ զի բարի է, զի յաւիտեան
է ողորմութիւն Նորա:
Ի նեղութեան իմում ես առ Տէր կարդացի, և լուաւ
ինձ յանդորր:
Տէր է իմ օգնական և ես ոչ երկեայց. զի՞ արասցէ
ինձ մարդ:

*Տէր է իմ օգնական, և ես տեսից ի թշնամիս իմ։*
*Բարի է յուսալ ի Տէր քան յուսալ ի մարդիկ. բարի է յուսալ ի Տէր քան յուսալ յիշխանս։*
*Ամենայն ազինք շրջեցան զինև, և անուամբ Տեառն յաղթեցի նոցա։*
*Շրջելով շրջեցան զինև, պաշարեցին զիս ի միասին. և անուամբ Տեառն վանեցի զնոսա։*
*Շուրջ եղեն զինև որպէս մեղուք, վառեցան բորբոքեցան որպէս փուշք ի հուր. և անուամբ Տեառն մերժեցի զնոսա։*
*Ի մերժելն դրդուեցայ և եղէ մերձ ի գլորել. և Տէր ընկալաւ զիս։*
*Զօրութիւն իմ և օգնութիւն իմ Տէր, և եղև ինձ ի փրկութիւն։*
*Ձայն ցնծութեան փրկութեան ի յարկս արդարոց։*
*Աջ Տեառն արար զօրութիւն, աջ Տեառն բարձր արար զիս, և աջ Տեառն արար զօրութիւն։*
*Ոչ մեռայց, այլ կեցից և պատմեցից զգործս Տեառն։*
*Խրատելով խրատեաց զիս Տէր և ի մահ ոչ մատնեաց։*
*Բացէք ինձ զդրունս արդարութեան՝ զի մտից ընդ այն, և խոստովան եղէց Տեառն։*

Եւ ապա ասեն ի դրան եկեղեցւոյն միաբան.

ՇԱՐԱԿԱՆ ԲՁ

*Շնորհեա մեզ Տէր արթնութիւն ընդ իմաստուն կուսանացն. եւ զհոգւոց մերոց լապտերըս պայծառացո։ Երկրպագեմք ի քէն Տէր զարհուրեալք ի պատասխանւոյն. զամէնն ասելով եթէ ոչ գիտեմ զձեզ։ Յորժամ գաս փառօք Հօր դատել զերկիրս ամենայն. շնորհեա մեզ Տէր կալ ի յաջմէ քումմէ։ Բացցի մեզ դուռն ողորմութեան երկնաւոր փեսային. եւ մտցուք ի յառագաստ ընդ իմաստուն կուսանսն։ Քամանեսցուք ընդ առաջ փեսային և մտցուք ի յառագաստ նորա. զի մի՛ մնասցուք արտաքս որպէս զյիմար կուսանսն։ Պայծառացին լապտերըք հոգւոց մերոց. եւ*

բազմեցուցեալս ըզմեզ ընդ հրաւիրեալսն ի կոչումն արքայութեանն երկնից։

Այս եղանակաւ կամ շքեղեալ քահանայն արտաքուստ առ դրունս եկեղեցւոյն կոչով, ասէ ողորմ ձայնիւ և դողութեամբ. քանզի կատարածի [illegible], և դատաստանի աւուրն նշանակ է։

Բաց մեզ Տէր. բաց մեզ Տէր. բաց մեզ Տէր զդրունս ողորմութեան. որ ողբալով կարդամք առ քեզ։

Եւ մի ոմն ի քահանայիցն կամ ի սարկաւագաց փակեալ ի ներքս կացեալ յայնկէ ասելով.

Ո՛վ են սոքա, զի բացցեն. զի այս դուռն Տեառն է. և արդարք մտանեն ընդ սա։

Եւ շքեղեալ քահանայն, և որք առ դրունս եկեղեցւոյն են, արտաքուստ ասեն ողբաձայն.

Ո՛չ թէ միայն արդարք մտանեն. այլ և մեղաւորք խոստովանութեամբ և ապաշխարութեամբ արդարացեալ մտանեն ընդ սա։

Եւ սարկաւագն ի ներքուստ ասէ.

Զի սա է դուռն երկնից և հովիտ արտասուութեան, զոր ուխտեաց Աստուած Յակոբայ, արդարոց հանգիստ, մեղաւորաց քաւարան, հրեշտակաց բնակարան, Քրիստոսի արքայարան, սրբոց ժողովարան, տեղի ապաւինի, լեառն Տեառն, եւ տուն Աստուծոյ։

Եւ քահանայն արտաքուստ ասէ.

Քանզի արժան և ճշմարիտ է զսա ասել վասըն սուրբ եկեղեցւոյ. զի սա է մեզ յոյս կենաց, և սովաւ գտանեմք ըզփրկութիւն հոգւոց. և սա է մեզ մայր անմահ. և ի սմանէ ծնանիմք որդիք լուսոյ և ճշմարտութեան. եւ զի սա է մեզ ճանապարհ արդարութեան. և սովաւ ելանեմք առ Քրիստոս հայր մեր երկնաւոր։

Digitized by Google

Եւ ասեն է դասն եկեղեցւոյն միաբան.

ՇԱՐԱԿԱՆ ԲԿ

Ի մասունս կուսանքն պատրաստեալ իւղ լապտերաց. ելին ընդ առաջ երկնաւոր փեսային վառեալ լապտերօք։ Իսկ յիմարացն կուսիցն ունայնացեալք ի յիւղոյ. անպատրաստ գտեալ զանգիտեցան փեսային շիջեալ լապտերօք։ Վասն որոյ եւ մեք պատրաստեսցուք իւղ հոգեւոր. զի մտցուք ի յառագաստն անմահ փեսային վառեալ լապտերօք։

Ցոյս իմ ես դու Տէր քաւիչ յանցանաց իմոց. մի անտես առներ զբղխումն արտասուաց իմոց ‖ ողորմեա ինձ Աստուած։ Առ քեզ ապաւինեցայ որպէս զանառակ որդին. հայր մեղայ յերկինս եւ առաջի քո ողորմեա։ Փրկեա զիս Աստուած ի բազում մեղաց իմոց. արա արժանի. քոյին սուրբ արքայութեանդ ողորմեա։

Մեղք իմ բազում են յոյժ ծանր են քան զաւազ ծովու. ‖ քաւիչ քեզ միայնոյ մեղայ. ողորմեա ինձ Աստուած։ Բաց Տէր ըզդուռն ողորմութեան որ ողբալով կարդամ առ քեզ. քաւիչ։ Հեղ յիս ըզգթութիւնդ քո բազումողորմ եւ մարդասէր. քաւիչ։

Եւ ապա ասէ շփեցեալ ձախանոյն քարոզն յայնժամ.

Բաց մեզ Տէր. բաց մեզ Տէր. բաց մեզ Տէր զդուռն ողորմութեան, որ ողբալով կարդամք առ քեզ։

Եւ սարկաւագն ի ներքուստ ասէ.

Ահա տեսանեմք ըզՏէրըն մեր Քրիստոս, որ բազմեալ կայ ի վերայ սրբոյ սեղանոյս. եւ կոչէ առ ինքն ըզկամարարս իւր. Թէ ուր եմ ես, անդ եւ պաշտօնեայն իմ եղիցի։

Digitized by Google

Եւ քահանայն արտաքուստ ասէ .

Գիրն եմք անապական արեան Որդւոյն Աստուծոյ . ցնծութեամբ օրհնեսցուք ըզՓրկիչն մեր Քրիստոս . և աղաչեսցուք ամենեքեան, փառք սքանչելի գալստեանն քո Տէր ։

Եւ ասէն մաղթանս .

ՇԱՐԱԿԱՆ ԲՁ

Թագաւոր փառաց քեզ սպասեսցուք պատրաստեալք արթնութեամբ . ընդառաջել որ գաս ի դատել զերկիր ։ Անարատ վառեալ լապտերօք հաւատոյ ընդ դասս իմաստուն կուսանացն մտանել ի յառագաստ ընդ երկնաւոր փեսային ։ Փութասցուք կանխել յառաջ քան զձայն աստուածային բարբառոյն . զի մի մնասցուք արտաքս ընդ յիմար հինգ կուսանացն ։

Եւ ի կատարածն Շարականին սրբեցեալ քահանայն ասէ արտաքուստ բարձր ձայնիւ .

Բաց մեզ Տէր . բաց մեզ Տէր . բաց մեզ Տէր զդուռն ողորմութեան, որ ողբալով կարդամք առ քեզ ։

Եւ սարկաւագն ի ներքուստ ասէ .

Փողն երկնաւորին Աստուծոյ անհնարին ձայնիւ գոչէ ասելով . ահա փեսայն գայ, արիք ընդ առաջ նորա ։

Եւ սրբեցեալ քահանայն ասէ ուղին և ողորմեցելոյ . Բացցի ի մեզ ողջոյն դուռն .

Ահա ես և մանկունք իմ զոր ետ ինձ Աստուած . կամք ամենեքեան, և այն ունիմք աւետոյն Քրիստոսի . և լսել զերանաւէտ բարբառն նորա ։

Եւ սարկաւագն ի ներքուստ պատասխանէ ասելով .

Ձայն արարչին Աստուծոյ գոչէ ասելով, եկայք օրհ-

Digitized by Google

նեալք Հօր իմոյ․ ժառանգեցէք զպատրաստեալ ձեզ զարքայութիւն երկնից ի սկզբանէ աշխարհի։

Եւ ապա փոխանակն ասէ ի Ողջ․

Բացէք ինձ զդրունս արդարութեան, զի մտից ընդ այն և խոստովան եղէց Տեառն։

Եւ բանայ զդուռն յետամբ խորանին․ զի եկեղեցականութեան նորա է փակելոյ և բանալոյ։ Եւ ամենայն ժողովուրդն մտանեն յեկեղեցին ցնծութեամբ և ուրախութեամբ։ Եւ ասեն․

ՇԱՐԱԿԱՆ ԴԿ

Զողորմութեան քո զդրունս բաց մեզ Տէր և արժանի արա ըզմեզ․ լուսեղէն յարկաց քոց ընդ սուրբս քո։ Ի պատրաստեալ քո յօթեվանսն սրբոց քոց․ ընկալ եւ ըզմեզ փրկիչ յորդեգրութիւն ի դըպրութեան կենաց։ Ի նըստել քո յատեանն դատաւոր ահեղ․ խնայեա յարարածըս քո բարերարութեամբ և աղօթիւք սուրբ ծըննդաւորացն։

## Զկնի Օրթի

### Սրբոյ Աւետարանին որ ըստ Յովհաննու։ ԺԲ․ 44։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Աղաղակէր և ասէր․ որ հաւատայ յիս, ոչ հաւատայ յիս, այլ յայն որ առաքեացն զիս։ Եւ որ տեսանէ զիս, զայն տեսանէ որ առաքեացն զիս։ Ես լոյս յաշխարհ եկի, զի ամենայն որ հաւատայ յիս՝ ի խաւարի մի՛ մնասցէ։ Եւ եթէ ոք լուիցէ բանից իմոց և ոչ պահեսցէ, ես ոչ դատիմ զնա․ քանզի ոչ եկի թէ դատեցայց զաշխարհ, այլ զի փրկեցից զաշխարհ։ Որ անարգէ զիս, և ոչ ընդունի զբանս իմ, գոյ որ դատի զնա․ բանն զոր ես խօսեցայ՝ նա դատի զնա յաւուրն յետնում։ Զի ես յանձնէ իմմէ ոչ խօսեցայ, այլ որ առաքեացն զիս Հայր՝ նա ետ ինձ պատուէր՝ զինչ ասացից և զինչ խօսեցայց։ Եւ գիտեմ եթէ պատուէրն այն կեանք են յաւիտենականք։ Արդ զոր ես խօսիմ, որպէս ասաց ինձ Հայրն այնպէս խօսիմ։ 50։

Քար․ Խնդրը։ Կեցո․ Յայնժմ։ Աղ․ Թագաւոր խաղ։ Հայր։

# ԱՒԱԳ
# ԵՐԿՈՒՇԱԲԱԹԻ ԲՁ

Ի ԳԻՇԵՐԻ Երգ Առաւօտ լուսոյ. տաղ յայս շաբաթս։

ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԲՁ

Անեղն ի Հօրէ ծնեալ Որդի յանէից գոյացուցեալ զեղեալքս. զերկնային և զերկրաւորս էութիւն. || Արարածք ամենայն տուք փառս Արարչին յաւիտեանս։ Պատկեր աներևոյթ փառացն Հօր ի պատկեր բարերարութեան իւրոյ. Արար ըզմարդկային բնութիւնս. Արարածք։ Լոյսն ի Հօրէ լուսոյ ծագեալ լուսափայլ զարդարեաց զԱդամ. ի դրախտին եդեալ անմահ տընկոցն երկրագործ. Արարածք։

† Եկայք որդիք մարդկան այսօր ողբասցուք ըզհօրն ըզվըտանգ. որ մերկացաւ մեղօք ըզփառս Արարչին. և զգեցաւ զթըզենոյն ծածկոյթ փոխանակ անճառ լուսոյն։ Գովեսցէք զՈրդին Աստուծոյ այսօր ցընծութեամբ որդիք Ադամայ. որ եկն ի խնդիր եղծեալ պատկերին. և գտեալ նորոգեաց ի փառս առաջին պատմուճանին։

Թագաւոր փառաց քեզ սպասեսցուք պատրաստեալք արթնութեամբ. ընդառաջել որ գաս ի դատել զերկիր։ Անաղօտ վառեալ լապտերօք հաւատոյ ընդ դասս իմաստուն կուսանացըն մըտանել ի յառագաստ ընդ երկնաւոր փեսային։ Փութասցուք կանխել յառաջ քան ըզձայն աստուածային բարբառոյն. զի մի մնասցուք արտաքս ըստ շիջման հինգ կուսանացն։

Որ նըստիս ի քրովբէս Աստուած Բանդ. այսօր վասըն մեր խոնարհութեամբ նըստար ի լերինըն ձիթենեաց. || Օրհնեմք ըզքեզ անդադար երգով։ Որ



Digitized by Google

համագոյդ ես խորհըրդոցդ Հայրենի. աշակերտաց քոց ծանուցեր ըզխորհուրդ քո զգալըստեանն. օրհնեմք։ Որ ամենայնից ես արարիչ եւ ըստեղծիչ կենդանութեան. այսօր ըզծածկեալ խորհուրդ Երրորդութեանըդ յայտնեցեր եկեղեցւոյ սըրբոյ քո. օրհնեմք։

Շնորհեա մեզ Տէր արթնութիւն ընդ իմաստուն կուսանացն. եւ զհոգւոց մերոց լապտերըս պայծառացո։ Երկընչիմք ի քէն Տէր զարհուրեալք ի պատասխանւոյն. զամէնն ասելով եթէ ոչ գիտեմ ըզձեզ։ Յորժամ գաս փառօք Հօր դատել ըզտիեզերս ամենայն. շնորհեա մեզ Տէր կալ ի յաջմէ քումմէ։ Բացցի մեզ դուռն ողորմութեան երկնաւոր փեսային. եւ մըտցուք ի յարագաստ ընդ իմաստուն կուսանսն։ Համանմանեացուք ընդ առաջ փեսային եւ մըտցուք ի յարագաստ նորա. զի մի մնասցուք արտաքս որպէս զյիմար կուսանսն։ Պայծառասցին լապտերըք հոգւոց մերոց. եւ բազմեցուսցես ըզմեզ ընդ հրաւիրեալսն ի կոչումն արքայութեանն երկնից։

Որ ի վերդ ես քան զամենայն ըզմիտս եւ զխորհուրդս. ‖ փառաց Թագաւոր խընայեա ի մեզ։ Որ միայն ունիս զանմահութիւն եւ զանեղութիւն. փառաց։ Որ նըստիս ի քրովբէս Երրորդութիւն անբաժանելի. փառաց։ Որ երկըրպագեալդ ես ի հրեշտակաց եւ ի մարդկանէ. փառաց։

ՀԳ. Նոյն եւ նըման Հօր եւ Որդւոյ Հոգիդ անեղ եւ համագոյ. բըղխումըն Հօր անքըննաբար առող յՈրդւոյ անճառաբար. ի վերնատունն այսօր իջեր զհոգիդ շնորհաց քոց արբուցեր. ‖ արբո եւ մեզ ողորմութեամբ ի բաժակէդ իմաստութեան։ Էից ստեղծող արարածոց որ շրջէիր ի վերայ ջրոց. նոյն եւ ի ջուրսն աւազանին

Digitized by Google

*ի շնորհել մեզ քում էակցին․ զըզգուեա սիրով աղաւնակերպ զմարդիկ ծնանիս աստուածակերպս․ ա՟ րբո։ Բարուն վերնոցն իմանալեաց և ըստորին այսըր զգալեաց․ որ մարգարէս տաս ի հովուաց և առաքեալս ի ձկնորսաց․ աւետաւոր ըզմաքսաւորս քարոզ բանի քում զհալածողս․ ա՟ րբո։*

*ՀՆ․ Հրեշտակային ձայնիւն օրհնեսցուք զամենասուրբ զԵրրորդութիւնըն փառաւորելով ըզՀայր․ որ վերակոչեաց ‖ զամենեսեան ի մահուանէ յանմահութիւն։ Երգեցէք Տեառն երգ նոր եկեղեցիք սըրբեցելոց․ Քրիստոսի երկըրպագելով․ որ վերադարձեաց զամենեսեան։ Սըրբասաց ձայնիւն օրհնեսցուք հոգեւորական հընչմամբ զովեսցուք․ սուրբ զՀոգին փառաւորելով․ որ վերահանգոյց զամենեսեան։*

*ՄԾ․ Ըզքեզ կոյս և մայր և բնակարան աստուածային ներմարդութեանն․ գոհանամք և վերօրհնեմք զեղեալ փրկող կենդանութեան ազգի մարդկան․ ‖ վասն որոյ ըզքեզ Աստուածածին և կոյս․ բարեբանեմք ըզմայր և զաղախին Փրկչին մերոյ։ Ծնունդըն Հօր և հինաւուրց անժամանակն յաւիտենից․ ժամանակաւ յորովայնի քում բնակեցաւ և ի Հօրէ ոչ մեկնեցաւ․ վասն որոյ։ Ծնեալն ի քէն ի խաչ ելեալ եւ ի յաթոռ փառաց ընդ Հօր․ անարգեալ ի մարդկանէ փառաւորութեամբ էութեամբ երկըրպագեալ․ վասն որոյ։ Ըզքեզ ոչ միայն որդիք մարդկան այլ եւ վերին զօրութիւնք․ դասք անմարմնոց հոգեղինաց հրեղինաց զըւարթնոց եւ հրեշտակաց․ գոհանան և վերօրհնեն եւ փառաւորեն ըզմայր և զաղախին Փրկչին մերոյ։*

*ԽԶ․ Բանականի արքայութեան տըւաւ հողածին մարդոյն․ ուստի յառաջին ճաշակմանէն արտաքս անկեալ*

ի յաւէժ կենդանութեանն || որ ձեւացոյց մեզ. սովաւ մըտանել ընդ դուռն աներղաշէն դրախտին Տեառն։ Գաւազանաձեւ երեւեալ եգիպտականն ազգին. ցուցանելով զզօրութիւն սրբոյ խաչին յափըշտակելով զգաւազանըն դիւթականն որ։ Դրոշմ զգայութեան օրինակեալ ի վերայ սեմոց դրանց նոցա. աներկիւղ պահելով զժողովուրդն յանդրանկածախ սատակմանէն որ։ — Փառք Հօր։ Երեւեալ աղխասանըման ակըն պատուական ի ձեռն խաչին. Հերձանելով զծովըն կարմիր առաջնորդելով ժողովրդեանն սեամբ ամպոյ է լոյսն անմեկնելի որ։

— Այժմ և միշտ։ Նոր Նորոգող բնութեան մերոյ Յիսուս որ ի խորհուրդ հընութեան մարդոյն. զանպըտուղն այսօր չորացուցեր զթզենին. եւ զմեզ ի հնացեալ մեղաց նորոգեա ի կեանս անմահ։

Մաղթանք. Փառք հրաշափառ տէրութեան։

Ալէլուիա. Առաջ Երկուշաբաթին. Զի նա ասաց։

---

ՅԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԲԶ

Որ արարիչդ ես յաւիտենից. եւ ստեղծեր զարարածս ամենայն յոչընչէ. || զքեզ օրհնեմք Աստուած հարցըն մերոց։ Որ թագաւորդ ես թագաւորաց. եւ շնորհես բանաւոր կենդանի մարդ ի հողոյ. զքեզ։ Որ ապաւէնդ ես մոլորելոց. եւ խնամես զյուսացեալքս ի քեզ քո տեսչութեամբդ. զքեզ։

Գ. ԸզՏէր օրհնեցէք || եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան։ Օրհնեցէք զթագաւորն եւ զԱստըւածն որ նըմա միայնոյ վայելէ օրհնութիւն եւ։ Օրհնեցէք զի ծանոյց մեզ սքանչելի խորհուրդ

սուրբ Երրորդութեանն և մի աստուածութեանն ընդ Քրիս-տոսի եւ :

ՄՆԾԱՑՈՒՍՑԷ ԲՁ

Զքեզ Հայր յառաջ քան զյաւիտեանս բարեբանեն դասք անմարմնոց հրեշտակաց . ձայնիւ երգով գոչեն և աղաղակեն . ‖ Աստուած աստուծոց և Տէր տէրանց Փըրկիչ գովելի : Առաքեցեր զքո Միածինդ մարմնանալ ի սուրբ կուսէն. եւ անարատ ծընանիլ յորովայնէ անապականն . բառնալով ըզմեղս նեղութեանս. Աստ : Շնորհք բարի յԵրուսաղէմ երեւեցաւ հեթանոսաց . զի արարիչն յաւիտենից տըղայ եղեալ յորդեգրութիւն կենաց կոչէ . Աստուած :

ՈՂՈՐՄԵԱ ԲՁ

Առ ամենեսեան գըթած Քրիստոս թագաւոր խաղաղութեան ըզքեզ աղաչեմք միայն մարդասէր : Ո-րում այսօր փափագեալ ցանկայր հոգւով եւ մարմնով. մայր որդւովք իւրովք խնդրէր ըզբարձրագոյն ըզփառս յերկրին կենդանեաց : Տըւողդ ըզկեանս անմահ առ քեզ աղաղակեմք և միաբան հայցեմք . շնորհեա և մեզ Տէր կալ ի յաջմէ քումմէ :

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԲՁ

Ըզքեզ օրհնեմք որ բաշխողդ ես բարութեանց . և հայցեմք որպէս ի մարդասիրէ . ընդ մօր քո ընտրելոցն զիմանալի աշխարհն : Զի դու ես Տէր յորմէ հայցէր մայրըն հաւատով հանդերձ որդւովք սըրբեցելովք . ընդ աջմէ քո զփառս եւ յաւէտ . ընդ որս և մեք աղաչեմք զի դասեսցես ընդ սուրբըս քո : Այլ դու բարձրեալ Փըրկիչ որ վասըն մեր խոնարհեցար . արժանի արա ըզմեզ ըմպել զբաժակ պատուիրանի կենաց քոց Տէր . որով կացցուք յաջմէ քումմէ ի հանդերձեալ քում գա-լըստեանն :

Digitized by Google

Առաւօտու Երգ

Ի սկզբանէ Տէր զհիմունս երկրի հաստատեցեր. եւ գործք ձեռաց քոց երկինք են:
Նոքա կորնչին. և դու կաս և մնաս յաւիտեան:
Քարոզ. փառաւորեսցուք:

ՄԱՆԿՈՒՆՔ ԲՁ

Ցէք զանունըն Տեառն. ‖ Ամալէլուիա. ա-
լէլուիա. ալէլուիա: Այսօր ընդ զօրս եր-
կընից համաձայնեալ. ‖ միաբանական ձայնիւ եր-
գեմք անլռելի. ա. Երկրաւորքս ընդ երկնայինսըն
հողեղէնքս ընդ հրեղէնսն. միաբանական:

Քար. Վասն խաղաղութեան: Աղ. Սուրբ ես Տէր:

Առ. ՍԱՂՄՈՍ ՃԳ. ողջոյն.

Կց. Խոստովանութիւն և մեծվայելչութիւն զգեցար. արկար զլոյս որպէս զօթոց. ձգեցեր զերկինս որպէս խորան, և արկար ի վերայ ջուրց զվերնայարկս Նորա:

Փխ. Օրհնեա անձն իմ զՏէր. Տէր Աստուած իմ մեծ եղեր յոյժ:

Խոստովանութիւն և մեծվայելչութիւն զգեցար. արկար զլոյս որպէս զօթոց. ձգեցեր զերկինս որպէս խորան, և արկար ի վերայ ջուրց զվերնայարկս Նորա:

Որ դնէ յամպս զգնացս իւր, և շրջի Նա ի վերայ թևոց հողմոց:

Որ արար զհրեշտակս իւր յոգիս. և զպաշտօնեայս իւր ի հուր կիզելոյ:

Հաստատեաց զերկիր ի վերայ հաստատութեան իւրոյ, զի մի՛ սասանեսցի յաւիտեան:

Խորք որպէս զգեստ վերարկու է Նորա. ի վերայ լերանց կացցեն ջուրք:

Ի սաստէ քումմէ փախիցեն, և ի ձայնէ որոտալոյ քումմէ սարսիցեն:

Ելանեն լեռնանան և իջանեն դաշտանան, ի տեղի յոր հաստատեցեր զնոսա:

Սահման եդիր՝ և ոչ անցանեն, և ոչ ևս դառնան ի ծածկել զերկիր:

Առաքեցեր զաղբիւրս ընդ ծործորս․ ի մէջ լերանց գնասցեն ջուրք ։

Արբուցանել զամենայն գազանս վայրի, յագեսցին ցիռք ի ծարաւս իւրեանց ։

Անդ թռչունք երկնից բոյնս դիցեն, և ի միջոյ վիմաց տացեն զձայնս իւրեանց ։

Արբուցանել զլերինս ի շտեմարանաց իւրոց, ի պտղոյ գործոց իւրոց լցցի երկիր ։

Բուսուցեր զխոտ ի լերինս, զդալարի ի ծառայութիւն մարդկան ։

Հաներ զհաց յերկրէ․ գինի ուրախ առնէ, իւղ զուարթ, և հաց հաստատէ զսիրտ մարդոյ ։

Յագեսցին ծառքն Տեառն․ և մայրքն Լիբանանու՝ զորս դու տնկեցեր ։

Անդ թռչունք երկնից ձագս հանցեն, և բոյն արագլի ապաւէն է նոցա ։

Լերինք բարձունք են եղջերուաց, և վէմք ապաւէն նապաստակաց ։

Արարեր զլուսին վասն ժամանակի, արեգակն ծանեաւ զժամ մտանելոյ իւրոյ ։

Արարեր զխաւար՝ և եղև գիշեր, ի նմա գնան ամենայն գազանք անտառի ։

Կորիւնք առիւծուց մռնչեն և յափշտակեն, և խնդրեն յԱստուծոյ զկերակուրս իւրեանց ։

Ի ծագել արևու ժողովին, և ի մորիս իւրեանց դադարեն ։

Ելանէ մարդ ի գործս իւր, և ի վաստակս ձեռաց իւրոց մինչև յերեկոյ ։

Որպէս զի մեծ են գործք քո Տէր․ զամենայն ինչ իմաստութեամբ արարեր․ և լցաւ երկիր ստեղծուածովք քովք ։

Այս ծով մեծ և անդորր․ ի սմա են սողունք՝ որոց ոչ գոյ թիւ․ գազանք մեծամեծք և մանունք․ ի սմա և նաւք գնան, վիշապն՝ զոր ստեղծեր խաղալ նովաւ ։

Ամենեքեան քեզ սպասեն, և դու տաս կերակուր նոցա ի ժամու ։

Տաս դու նոցա և կերակրին․ բանաս զձեռն քո՝ կերակրես զամենեսեան կամօք քովք ։

Դարձուցանես զերեսս քո ի նոցանէ՝ և խռովին, հանես զոգի ի նոցանէ՝ պակասին և ի հող դառնան ։

Digitized by Google

Առաքես զոգի քո և ստանաս զնոսա, և նորոգես զերեսս երկրի:

Եղիցին փառք Տեառն յաւիտեան, Տէր ուրախ եղիցի յարարածս իւր:

Ո հայի յերկիր և տայ դողալ սմա. մերձի ի լերինս և ծխեսցին:

Օրհնեցից զՏէր ի կեանս իմ, սաղմոս ասացից Աստուծոյ իմոյ մինչև եմ ես:

Քաղցր եղիցի նմա օրհնութիւն իմ, և ես ուրախ եղէց ի Տէր:

Պակասեսցին մեղաւորք յերկրէ, և ամբարիշտք մի՛ ևս գտցին ի նմա. օրհնեա անձն իմ զՏէր:

## Զկնի Օրթի

### Սրբոյ Աւետարանին որ ըստ Մատթէոսի: ԻԱ. 18:

Տէրն մեր Յիսուս Քրիստոս.

Եւ այգուցն իբրև դարձաւ անդրէն ի քաղաքն՝ քաղցեաւ: Եւ տեսեալ թզենի մի ի վերայ ճանապարհին, եկն ի նա, և ոչ ինչ եգիտ ի նմա՝ բայց միայն տերև. և ասէ ցնա. մի՛ այսուհետև ի քէն պտուղ եղիցի յաւիտեան. և առժամայն չորացաւ թզենին: Իբրև տեսին աշակերտքն՝ զարմացան և ասեն, թէ զիարդ վաղվաղակի ցամաքեցաւ թզենին: Պատասխանի ետ Յիսուս և ասէ ցնոսա. ամէն ասեմ ձեզ, եթէ ունիցիք հաւատս և ոչ երկմտիցէք, ոչ միայն թզենւոյդ առնիցէք. այլ թէպէտ և լերինդ ասիցէք՝ բարձիր և անկիր ի ծով, եղիցի: Եւ զամենայն ինչ զոր և խնդրիցէք յաղօթս հաւատովք՝ առնուցուք: Եւ իբրև եկն ի տաճարն, մատեան առ նա՝ մինչդեռ ուսուցանէր՝ քահանայապետքն և ծերք ժողովրդեանն և ասեն. որո՞վ իշխանութեամբ առնես զայդ, և ո՞վ ետ քեզ զիշխանութիւնդ զայդ: Պատասխանի ետ Յիսուս և ասէ ցնոսա. հարցից և ես զձեզ բան մի. զոր թէ ասիցէք ինձ, և ես ձեզ ասացից՝ որով իշխանութեամբ առնեմ զայս: Մկրտութիւնն Յովհաննու ուստի՞ էր, յերկնից թէ ի մարդկանէ: Եւ նոքա խորհէին ընդ միմեանս և ասէին. եթէ ասեմք՝ յերկնից, ասէ ցմեզ. իսկ ընդէ՞ր ոչ հաւատացէք նմա. և եթէ ասեմք ի մարդկանէ, երկնչիմք ի ժողովրդենէն. զի ամենեքին

զՅովհաննէս իբրև զմարգարէ ունէին։ Պատասխանի ետուն Յիսուսի և ասեն. ոչ գիտեմք։ Ասէ ցնոսա և նա. և ոչ ես ասեմ ձեզ՝ որով իշխանութեամբ առնեմ զայս։ Բայց զի՞րդ թուի ձեզ. առն միոջ էին երկու որդիք, և մատուցեալ առ առաջինն՝ ասէ. որդեակ, երթ այսօր գործեա յայգւոջ։ Նա պատասխանի ետ և ասէ. երթամ տէր, և ոչ չոգաւ։ Մատեաւ և առ միւսն, և ասէ նոյնպէս. Նա պատասխանի ետ և ասէ. ոչ կամիմ. բայց յետոյ զղջացաւ և չոգաւ յայգին։ Արդ ո՞ յերկոցունց արար զկամս հօրն։ Ասեն. յետինն։ Ասէ ցնոսա Յիսուս. ամէն ասեմ ձեզ, զի մաքսաւորք և պոռնիկք յառաջեսցեն քան զձեզ յարքայութիւն երկնից։ Զի եկն Յովհաննէս ճանապարհաւ արդարութեան, և ոչ հաւատացէք նմա. և մաքսաւորք և պոռնիկք հաւատացին նմա, և դուք տեսէք՝ և ոչ զղջացարուք յետոյ հաւատալ նմա։ Այլ առակ լուարուք. այր մի էր տանուտէր՝ որ տնկեաց այգի, և ցանգով պատեաց զնա, և փորեաց ի նմա հնձան, և շինեաց աշտարակ. և ետ զնա մշակս, և գնաց ի տար աշխարհ։ Իբրև մերձեցաւ ժամանակ պտղոյ, առաքեաց զծառայս իւր առ մշակսն՝ առնուլ զպտուղս նորա։ Եւ կալեալ մշակացն զծառայս նորա, զոմն տանջեցին, զոմն սպանին, զոմն քարկոծեցին։ Դարձեալ առաքեաց այլ ծառայս բազումս քան զառաջինսն, և արարին նոցա նոյնպէս։ Յետոյ առաքեաց առ նոսա զորդի իւր, և ասէ. թերևս ամաչեսցեն յորդւոյ աստի իմմէ։ Իսկ մշակքն իբրև տեսին զորդին, ասեն ընդ միտս. սա է ժառանգն. եկայք սպանցուք զսա, և կալցուք զժառանգութիւն սորա։ Եւ առեալ հանին զնա արտաքոյ քան զայգին, և սպանին։ Արդ յորժամ եկեսցէ տէր այգւոյն, զի՞նչ արասցէ մշակացն այնոցիկ։ Ասեն ցնա. զչարսն չարակորուսցէ, և զայգին տացէ այլոց մշակաց որք տայցեն նմա զպտուղս ի ժամու իւրեանց։ Ասէ ցնոսա Յիսուս. չիցէ՞ երբեք ընթերցեալ ձեր ի գիրս. վէմն՝ զոր անարգեցին շինօղքն, նա եղև գլուխ անկեան. ի Տեառնէ եղև այս, և է սքանչելի յաչս մեր։ Վասն այսորիկ ասեմ ձեզ, զի բարձցի ի ձէնջ արքայութիւնն Աստուծոյ, և տացի ազգի՝ որ առնիցէ զպտուղս նորա։ Եւ որ անկցի ի վերայ վիմիս այսորիկ՝ փշրեսցի, և յոյր վերայ անկցի՝ հոսեսցէ զնա։ Իբրև լուան քահանայապետքն և դպիրք

Digitized by Google

*և փարխեցիք զառակս Նորա, գիտացին թէ վասն Նոցա ասաց ։ Եւ խնդրէին զնա ունել, բայց երկեան ի ժողովրդոցն. քանզի իբրև զմարգարէ ունէին զնա ։ Դարձեալ պատասխանի ետ Յիսուս, և ասէ ցնոսա առակօք. Նմանեցաւ արքայութիւն երկնից առն թագաւորի, որ արար հարսանիս որդւոյ իւրում ։ Եւ առաքեաց զծառայս իւր կոչել զհրաւիրեալսն ի հարսանիս, և ոչ կամեցան գալ ։ Դարձեալ առաքեաց այլ ծառայս և ասէ. ասացէք հրաւիրելոցն, ահաւասիկ զճաշ իմ պատրաստեցի. զուարակք իմ և պարարակք զենեալ են, և ամենայն ինչ պատրաստ է. եկայք ի հարսանիսս ։ Եւ Նոքա յուլացեալ գնացին ոմն յագարակ իւր, և ոմն ի վաճառ իւր, և այլք կալան զծառայս Նորա՝ թշնամանեցին և սպանին ։ Իսկ թագաւորն իբրև լուաւ՝ բարկացաւ, և առաքեաց զզօրս իւր և սատակեաց զսպանօղսն զայնոսիկ, և զքաղաքն Նոցա այրեաց ։ Յայնժամ ասէ ցծառայս իւր. հարսանիքս պատրաստ են, և հրաւիրեալքն չէին արժանի ։ Արդ երթայք յանցս ճանապարհաց, և զորս միանգամ գտանիցէք՝ կոչեցէք ի հարսանիսս ։ Եւ ելեալ ծառայքն ի ճանապարհս ժողովեցին զամենեսեան զորս և գտին զչարս և զբարիս. և լցան հարսանիքն բազմականօք ։ Եւ մտեալ թագաւորն հայել զբազմականօքն՝ ետես անդ այր մի որ ոչ էր զգեցեալ հանդերձ հարսանեաց. և ասէ ցնա. ընկեր, զիա՞րդ մտեր այսր, զի ոչ ունէիր հանդերձ հարսանեաց. և Նա պապանձեցաւ ։ Յայնժամ ասէ թագաւորն սպասաւորսն. կապեցէք զդորա զոտս և զձեռս՝ և հանէք զդա ի խաւարն արտաքին, անդ եղիցի լալ և կրճել ատամանց ։ Զի բազումք են կոչեցեալք՝ և սակաւք են ընտրեալք ։ ԻԲ. 14.*

Երգ. Արարչական ։ Քար. Խնդրեսցուք ։ Կեցո. Է Ռի ։
Աղ. Քում ամենազօր և հրաշալի տէրութեանդ ։

Աւետարանն կանոն յառաջ շարականաց ոչ ունի ։

---

ՁՃԱՇՈՒ ժամն ասեն հանդերձ շարականօք և մեծ աղօթիւքն ։

---

Ց Ե Ր Ե Կ Ո Ց Ի Ն

Ի դրան ժամուն սկսանին. Խոնարհեցո և Ապրեցո ։

ՄԵՍԵԴԻ

Բերան արդարոյ խորհի զիմաստութիւն, և լեզու նորա խօսեսցի զիրաւունս :
Մի՛ նախանձիր ընդ չարս . և մի՛ ընդ այնոսիկ՝ ոյք գործեն զանօրէնութիւն :

Ցայս շաբաթս՝ երեկոյէ մերոն աշակերտի դասուն է, որ շԱպրեցոյն սխանէ. և առաւօտանն առաջերէցս դասուն, որ շխոնարհեցոյն սխանէ :

Ընթերցուած ի Ծննդոց: Ա. 1:

Ի սկզբանէ արար Աստուած զերկին և զերկիր : Եւ երկիր էր աներևոյթ և անպատրաստ, և խաւար ի վերայ անդնդոց . և Հոգի Աստուծոյ շրջէր ի վերայ ջուրց: Եւ ասաց Աստուած . եղիցի լոյս : Եւ եղև լոյս . և ետես Աստուած զլոյսն զի բարի է . և մեկնեաց Աստուած ի մէջ լուսոյն և ի մէջ խաւարին . և կոչեաց Աստուած զլոյսն տիւ, և զխաւարն կոչեաց գիշեր . և եղև երեկոյ՝ և եղև վաղորդայն, օր մի : Եւ ասաց Աստուած . եղիցի հաստատութիւն ի մէջ ջրոցդ, և եղիցի մեկնել ի մէջ ջուրցդ և ջուրց : Եւ եղև այնպէս : Եւ արար Աստուած զհաստատութիւնն . և անջրպետեաց Աստուած ի մէջ ջրոյն որ ի ներքոյ հաստատութեանն, և ի մէջ ջրոյն որ ի վերոյ հաստատութեանն . և կոչեաց Աստուած զհաստատութիւնն երկին . և ետես Աստուած զի բարի է . և եղև երեկոյ, և եղև վաղորդայն, օր երկրորդ : Եւ ասաց Աստուած . ժողովեսցին ջուրքդ որ ի ներքոյ երկնից ի ժողով մի, և երևեսցի ցամաքն : Եւ եղև այնպէս . և ժողովեցան ջուրքն որ ի ներքոյ երկնից՝ ի ժողովս իւրեանց, և երևեցաւ ցամաքն : Եւ կոչեաց Աստուած զցամաքն երկիր, և զժողովս ջուրցն կոչեաց ծովս . և ետես Աստուած զի բարի է : Եւ ասաց Աստուած . բղխեսցէ երկիր զբանջար խոտոյ, սերմանել սերմն ըստ ազգի և ըստ նմանութեան . և ծառ պտղաբեր՝ առնել պտուղ ըստ ազգի իւրում, որոյ սերմն իւր ի նմին ըստ ազգի ի նմանութիւն ի վերայ երկրի : Եւ եղև այնպէս : Եւ եհան երկիր բանջար խոտոյ, սերմանել սերմն որ է ի վերայ ամենայն երկրի . և փայտ պտղաբեր՝ առնել պտուղ որոյ սերմն իւր ի նմին ըստ ազգի ի վերայ եր-

Digitized by Google

կրի · և տես Աստուած զի բարի է · և եղև երեկոյ, և եղև վաղորդայն, օր երրորդ ։ Եւ ասաց Աստուած · եղիցին լուսաւորք ի հաստատութեան երկնից, ի լուսաւորութիւն ի վերայ երկրի, և մեկնել ի մէջ տուընջեան և ի մէջ գիշերոյ · և եղիցին ի նշանս և ի ժամանակս և յաւուրս և ի տարիս · և եղիցին ի լուսաւորութիւն ի հաստատութեան երկնից ծագել յերկիր ։ Եւ եղև այնպէս ։ Եւ արար Աստուած զերկուս լուսաւորսն զմեծամեծս · զլուսաւորն մեծ յիշխանութիւն տուընջեան, և զլուսաւորն փոքր յիշխանութիւն գիշերոյ, և զաստեղս ։ Եւ եդ զնոսա Աստուած ի հաստատութեան երկնից լուսատու լինել յերկիր, և իշխել տուընջեան և գիշերոյ, և մեկնել ի մէջ լուսոյն և ի մէջ խաւարին · և տես Աստուած զի բարի է · և եղև երեկոյ, և եղև վաղորդայն, օր չորրորդ ։ Եւ ասաց Աստուած · հանցեն ջուրք զեռունս շնչոյ կենդանեաց, և թռչունս թևաւորս ի վերայ երկրի ըստ հաստատութեան երկնից ։ Եւ եղև այնպէս ։ Եւ արար Աստուած կէտս մեծամեծս, և զամենայն շունչ զեռնոց կենդանեաց · զոր հանին ջուրք ըստ ազգի իրեանց, և զամենայն թռչունս թևաւորս ըստ ազգի · և տես Աստուած զի բարի են ։ Եւ օրհնեաց զնոսա Աստուած և ասէ · աճեցէք և բազմացարուք, և լցէք զջուրս որ ի ծովս · և թռչունքդ բազմասցին ի վերայ երկրի ։ Եւ եղև երեկոյ, և եղև վաղորդայն, օր հինգերորդ ։ Եւ ասաց Աստուած · հանցէ երկիր շունչ կենդանի ըստ ազգի չորքոտանի, և սողունս և գազանս երկրի ըստ ազգի ։ Եւ եղև այնպէս ։ Եւ արար Աստուած զգազանս երկրի ըստ ազգի, և զանասունս ըստ ազգի, և զամենայն սողունս երկրի ըստ ազգի իւրեանց · և տես Աստուած զի բարի են ։ Եւ ասաց Աստուած · արասցուք մարդ ըստ պատկերի մերում և ըստ նմանութեան, և իշխեսցեն ձկանց ծովու և թռչնոց երկնից և անասնոց և ամենայն երկրի և ամենայն սողնոց որ սողին ի վերայ երկրի ։ Եւ արար Աստուած զմարդն ի պատկեր իւր, ըստ պատկերի Աստուծոյ արար զնա, արու և էգ արար զնոսա ։ Եւ օրհնեաց զնոսա Աստուած և ասէ · աճեցէք և բազմացարուք և լցէք զերկիր, և տիրեցէք դմա, և իշխեցէք ձկանց ծովու և թռչնոց երկնից և ամենայն անասնոց և ամենայն երկրի և ամենայն սողնոց որ սողին

ի վերայ երկրի ։ Եւ ասաց Աստուած. ահաւադիկ ետու ձեզ զամենայն խոտ սերմանելի՝ սերմանել սերմն, որ է ի վերայ ամենայն երկրի, և զամենայն փայտ որ ունիցի յինքեան պտուղ սերման սերմանելոյ՝ ձեզ լիցի ի կերակուր, և ամենայն գազանաց երկրի, և ամենայն թռչնոց երկնից, և ամենայն սողնոց որ սողին ի վերայ երկրի՝ որ ունիցի շունչ կենդանի. և ամենայն խոտ դալար ի կերակուր։ Եւ եղև այնպէս ։ Եւ ետես Աստուած զամենայն զոր արար, և ահա բարի են յոյժ. և եղև երեկոյ, և եղև վաղորդայն, օր վեցերորդ ։ Եւ կատարեցան երկինք և երկիր և ամենայն զարդ նոցա. և կատարեաց Աստուած յաւուրն վեցերորդի զգործս իւր՝ զոր արար. և հանգեաւ յաւուրն եօթներորդի յամենայն գործոց իւրոց՝ զոր արար. և օրհնեաց Աստուած զօրն եօթներորդ. և սրբեաց զնա. զի ի նմա հանգեաւ յամենայն գործոց իւրոց՝ զոր սկսաւ առնել Աստուած ։ Այս է գիր արարածոց երկնի և երկրի, յաւուր յորում արար Աստուած զերկինս և զերկիր, և զամենայն բանջար վայրի՝ մինչ չև լեալ էր ի վերայ երկրի, և զամենայն խոտ վայրի մինչ չև բուսեալ էր, զի չև ևս էր տեղացեալ Տեառն Աստուծոյ ի վերայ երկրի. և մարդ չէր՝ որ գործէր զերկիր։ Բայց աղբիւր ելանէր յերկրէ և ոռոգանէր զամենայն երեսս երկրի ։ Եւ ստեղծ Տէր Աստուած զմարդն հող յերկրէ. և փչեաց յերեսս նորա շունչ կենդանի, և եղև մարդն յոգի կենդանի։ Եւ տնկեաց Աստուած զդրրախտն յԵդեմ ընդ արևելս, և եդ անդ զմարդն զոր ստեղծ ։ Եւ բուսոյց ևս Տէր Աստուած յերկրէ զամենայն ծառ գեղեցիկ ի տեսանել և քաղցր ի կերակուր, և զծառն կենաց ի մէջ դրախտին, և զծառն գիտելոյ զգիտութիւն բարւոյ և չարի ։ Եւ գետ ելանէր յԵդեմայ ոռոգանել զդրախտն. և անտի բաժանի ի չորս առաջս ։ Անուն միումն Փիսոն. նա է որ պատէ զամենայն երկիրն Եւիլատայ, անդ ուր ոսկին է, և ոսկի երկրին այնորիկ ազնիւ. և անդ է սուտակն և ակն դահանակ ։ Եւ անուն գետոյն երկրորդի Գեհոն. նա պատէ զամենայն երկիրն Եթովպացւոց ։ Եւ գետն երրորդ՝ Տիգրիս, նա է որ երթայ յանդիման Ասորեստանի ։ Եւ գետն չորրորդ Եփրատէս ։ Եւ առ Տէր Աստուած զմարդն զոր արար, և եդ զնա ի դրախտին փափկութեան գործել զնա և պահել ։

Եւ պատուիրեաց Տէր Աստուած Ադամայ՝ և ասէ . յա-
մենայն ծառոց որ է ի դրախտիդ՝ ուտելով կերիցես .
բայց ի ծառոյն գիտութեան բարւոյ և չարի՝ մի՛ ուտի-
ցէք, զի յորում աւուր ուտիցէք ի նմանէ՝ մահու մեռա-
նիցիք։ Եւ ասաց Տէր Աստուած . ոչ է բարւոք մարդոյդ
միայն լինել , արասցուք դմա օգնական ըստ դմա ։ Եւ
ստեղծ ևս Տէր Աստուած զամենայն գազանս վայրի և
զամենայն թռչունս երկնից . և ած զնոսա առ Ադամ՝
տեսանել զինչ կոչեսցէ զնոսա . և ամենայն շնչոյ կեն-
դանւոյ զինչ և անուանեաց Ադամ, այն անուն է նորա։
Եւ կոչեաց Ադամ անուանս ամենայն անասնոց, և ամե-
նայն թռչնոց երկնից, և ամենայն գազանաց վայրի . բայց
Ադամայ ոչ գտաւ օգնական նման նմա ։ Եւ արկ Տէր
Աստուած թմբրութիւն ի վերայ Ադամայ, և ննջեաց . և
առ մի ի կողից նորա՝ և ելից ընդ այնր մարմին ։ Եւ
շինեաց Տէր Աստուած զկողն զոր առ յԱդամայ ի կին,
և ած զնա առ Ադամ։ Եւ ասէ Ադամ . այս այժմիկ ոսկր
յոսկերաց իմոց և մարմին ի մարմնոյ իմմէ . սա կոչեսցի
կին զի յառնէ իւրմէ առաւ։ Վասն այնորիկ թողցէ այր
զհայր իւր և զմայր իւր, և երթիցէ զհետ կնոջ իւրոյ,
և եղիցին երկուքն ի մարմին մի ։ Եւ էին երկոքեան
մերկ՝ Ադամ և կին իւր, և ոչ ամաչէին։ Եւ օձն էր ի-
մաստնագոյն քան զամենայն գազանս որ ի վերայ երկրի
զոր արար Տէր Աստուած ։ Եւ ասէ օձն ցկինն . զի՞ է զի
ասաց Աստուած թէ յամենայն ծառոց որ իցեն ի ներքս
ի դրախտի այդր՝ մի՛ ուտիցէք ։ Եւ ասէ կինն ցօձն . ի
պտղոյ ծառոց դրախտիդ կերիցուք, բայց ի պտղոյ ծա-
ռոյն՝ որ է ի մէջ դրախտին , ասաց Աստուած, մի՛ ու-
տիցէք ի նմանէ, և մի՛ հուպ լինիցիք զի մի՛ մեռանի-
ցիք ։ Եւ ասէ օձն ցկինն . ոչ եթէ մահու մեռանիցիք .
զի գիտէր Աստուած թէ յորում աւուր ուտիցէք ի նմա-
նէ , բանայցեն աչք ձեր, և լինիցիք իբրև զԱստուածս՝
ճանաչել զբարի և զչար ։ Եւ ետես կինն զի բարի էր
ծառն ի կերակուր և հաճոյ աչաց հայելոյ, և գեղեցիկ
ի տեսանել. և առ ի պտղոյ նորա եկեր. և ետ առն իւ-
րում ընդ իւր , և կերան ։ Եւ բացան աչք երկոցունց,
և գիտացին զի մերկ էին. և կարեցին տերևս թզենւոյ,
և արարին իւրեանց ափածանելիս։ Եւ լուան զձայն զբօ-
սնլոյ Տեառն Աստուծոյ ի դրախտի անդ ընդ երեկս, և

թաքեան Ադամ և կինն իւր յերեսաց Տեառն Աստուծոյ՝ ի մէջ ծառոց դրախտին։ Եւ կոչեաց Տէր Աստուած զԱդամ, և ասէ ցնա. ո՞ւր ես։ Եւ ասէ. լուայ զձայն քո ի դրախտի աստ՝ և երկեայ. քանզի մերկ էի և թաքեայ։ Եւ ասէ ցնա. ո՞ պատմեաց քեզ թէ մերկ ես. բայց եթէ ի ծառոյն յորմէ պատուիրեցի քեզ՝ անտի ևեթ չուտել, կերա՞ր արդեօք ի նմանէ։ Եւ ասէ Ադամ. կինս զոր ետուր ընդ իս՝ սա ետ ինձ ի ծառոյ անտի և կերայ։ Եւ ասէ Տէր Աստուած ցկինն. զի՞նչ գործեցեր զայդ։ Եւ ասէ կինն. օձն խաբեաց զիս, և կերայ։ Եւ ասէ Տէր Աստուած ցօձն. փոխանակ զի արարեր դու զայն, անիծեալ լիջիր դու յամենայն անասնոց և յամենայն գազանաց երկրի. ի վերայ լանջաց և որովայնի քո գնասցես, և հող կերիցես զամենայն աւուրս կենաց քոց։ Եւ եդից թշնամութիւն ի մէջ քո և ի մէջ կնոջդ, և ի մէջ զաւակի քո և ի մէջ զաւակի դորա. նա սպասեսցէ քում գլխոյ, և դու սպասեսցես նորա գարշապարի։ Եւ ցկինն ասէ. բազմացուցանելով բազմացուցից զտրտմութիւնս քո և զհեծութիւնս քո. տրտմութեամբ ծնցես որդիս, և առ այր քո դարձ քո, և նա տիրեսցէ քեզ։ Եւ ցԱդամ ասէ. փոխանակ զի լուար ձայնի կնոջդ քո, և կերար ի ծառոյ անտի, յորմէ պատուիրեցի քեզ անտի միայն չուտել, և կերար ի նմանէ, անիծեալ լիցի երկիր ի գործս քո. տրտմութեամբ կերիցես զնա զամենայն աւուրս կենաց քոց։ Փուշ և տատասկ բուսուսցէ քեզ. և կերիցես զբանջար վայրի. քրտամբք երեսաց քոց կերիցես զհաց քո, մինչև դարձցիս յերկիր, ուստի առար. զի հող էիր և ի հող դարձցիս։ Եւ կոչեաց Ադամ զանուն կնոջ իւրոյ կեանս. զի նա է մայր ամենայն կենդանեաց։ Եւ արար Տէր Աստուած Ադամայ և կնոջ նորա հանդերձս մաշկեղէնս, և զգեցոյց զնոսա։ Եւ ասէ Տէր Աստուած. ահա Ադամ եղև իբրև զմի ի մէնջ գիտել զբարի և զչար. և արդ գուցէ ձգիցէ զձեռն, և առնուցու ի ծառոյն կենաց, ուտիցէ և կեցցէ յաւիտեան։ Եւ եհան արձակեաց զնա Տէր Աստուած ի դրախտէ անտի փափկութեան՝ գործել զերկիր ուստի առաւ. և եհան զԱդամ և բնակեցոյց յանդիման դրախտին փափկութեան. և հրամայեաց քերովբէից և բոցեղէն սրոյ՝ շուրջանակաւ պահել զճանապարհս ծառոյն կենաց։ Գ. 24։

Digitized by Google

Ընթերցուած յԱռակաց: Ա. 1:

Ճանաչել զիմաստութիւն և զխրատ, իմանալ զբանս հանճարոյ, ընդունել զդարձուածս բանից, ի միտ առնուլ զարդարութիւն ճշմարիտ, և ուղղել զիրաւունս։ Զի տացէ անմեղաց զխորագիտութիւն, մանկանց տղայոց զմիտ և զհանճար։ Որոց իբրև լուիցէ իմաստունն՝ իմաստնագոյն լիցի. իսկ որ հանճարեղն իցէ՝ զառաջնորդութիւն ստասցի։ Ի միտ առցէ զառակս և զբանս խորինս, զճառս իմաստնոց և զառակս նոցա։ Սկիզբն իմաստութեան երկիւղ Տեառն, հանճար բարի ամենեցուն որ առնեն զնա. պաշտօն բարի առ Աստուած՝ սկիզբն զգօնութեան. զիմաստութիւն և զխրատ՝ ամպարիշտք անգոսնեն։ Լուր որդեակ խրատու հօր քո, և մի՛ մերժեր զօրէնս մօր քո, զի պսակ շնորհաց ընկալցիս ի գլուխ քո. և մանեակ ոսկի ի պարանոցի քում։ 9։

Ընթերցուած յԵսայեայ մարգարէէ: Խ. 1:

Մխիթարեցէք, մխիթարեցէք զժողովուրդ իմ, ասէ Աստուած. քահանայքդ խօսեցարուք ի սիրտ Երուսաղեմի՝ և մխիթարեցէք զդա, զի լի եղև տառապանօք։ Թողեալ լիցին դմա մեղք իւր, զի ընկալաւ ի ձեռանէ Տեառն կրկին զհատուցումն մեղաց իւրոց։ Ձայն բարբառոյ յանապատի. պատրաստ արարէք զճանապարհս Տեառն, և ուղիղ արարէք զշաւիղս Աստուծոյ մերոյ։ Ամենայն ձորք լցցին, և ամենայն լերինք և բլուրք խոնարհեսցին. և եղիցին ամենայն դժուարինք ի դիւրինս, և առապարքն ի դաշտս։ Եւ երևեսցին փառքն Տեառն. և տեսցէ ամենայն մարմին զփրկութիւն Աստուծոյ. զի Տէր խօսեցաւ։ Ձայն որ ասէ. գոչեա. և ասեմ. զի՞նչ գոչեցից։ Գոչիր, ամենայն մարմին խոտ է, և ամենայն փառք մարդոյ իբրև զծաղիկ խոտոյ։ Ցամաքեցաւ խոտն, և թօթափեցաւ ծաղիկ նորա, զի ոգի Տեառն շնչեաց ի նա. արդարև խոտ է ժողովուրդս այս. ցամաքեցաւ խոտն, և թօթափեցաւ ծաղիկն. և բան Տեառն մնայ յաւիտեան։ 8։

Աղ. Ուղիղ եղիցին ասա։ Քար. Աղաչեսցուք։

ՀԱՄԲԱՐՁԻ ԲԶ

Ո՛ր յանէից գոյացուցեր զքո զարարածս ի սկըզբա-

Digitized by Google

նէ. Է պատկեր աստուածութեանըդ քո ստեղծեր մարդ
ի հողոյ. ժառանգել նըմա զանպատում ըզկեանսն։
Իսկ պատրանօք բանսարկուին ի դրախտէն արտաքս
անկեալ. Է յաւէժ կենդանութեանըն մահառիթ պըտղով
մեռեալ. մերկացաւ ըզփառս անըստուեր լուսոյն։ Այլ
դու Փըրկիչ բարերար որ մարմնացար ի սուրբ կուսէն.
Եւ հեղմամբ արեանըդ քո բարձեր զյանցանս նախաս-
տեղծին. փըրկելով ըզմեզ յանիծից նորա։ Որ ըստ
պարտեաց նախահօրըն յանձն առին յօժարութեամբ.
ըմպել զբաժակ չարչարանաց ընդ քեզ որդիքըն Զե-
բեթեայ. շնորհեա մեզ Տէր ըզբաժակ քո փըրկութեան։
Ի միւսանգամ քո գալըստեանըն յորժամ գաս դատել
զերկիր. ընդ նոսին դասաւորեա ըզմեզ ի փառս յա-
ջակողմեանն. որով հանցուք քեզ օրհնութիւն յանըս-
պառ յաւիտենին։

Քոր. Վասն խաղաղութեան։ Աղ. Հայր գթած։

Աղօ. ՍԱՂՄՈՍ ԿԴ. ողջոյն.

48. Լուր մեզ Աստուած փրկիչ մեր, յոյս ամենայն ծագաց երկրի և որ ի ծով հեռի։

Փխ. Քեզ վայելէ օրհնութիւն Աստուած ի Սիովն, և քեզ տացին աղօթք յԵրուսաղէմ։

Լուր աղօթից իմոց, զի առ քեզ ամենայն մարմին եկեսցէ։

Բանք անօրինաց զօրացան ի վերայ մեր, զամբարշտութիւնս մեր դու քաւեսցես։

Երանի զոր ընտրեցեր և ընկալար, և բնակեսցեն ի գաւիթս քո։

Լցցուք մեք ի բարութենէ տան քո, սուրբ է տաճար քո սքանչելի արդարութեամբ։

Լուր մեզ Աստուած փրկիչ մեր, յոյս ամենայն ծագաց երկրի և որ ի ծով հեռի։

Որ պատրաստէ զլերինս զօրութեամբ իւրով, և զգեցեալ է զզօրութիւն։

Ո խռովեցուցանէ զմեծութիւն ծովու, և զձայն ալեաց Նորա ցածուցանէ։

Խռովեսցին հեթանոսք, և երկիցեն բնակիչք երկրի ի նշանաց քոց։

Ցելս առաւօտու, ընդ երեկոյս զուարճասցին. հայեցար յերկիր՝ արբեցուցեր զնա, և բազում արարեր զմեծութիւն Նորա։

Գետն Աստուծոյ լի եղև ջուրբ. պատրաստ արարեր զկերակուր Նորա, զի այսպէս է պատրաստութիւն։

Զակօս Նորա արբեցուցեր, և բազում արարեր զարմրտիս Նորա։

Ի ցօղել Նորա՝ զուարթ եղիցի բոյս Նորա. օրհնեսցի պսակ տարւոյ քաղցրութեան քո։

Դաշտք քո լցցին պարարտութեամբ, պարարտասցին գեղեցկութիւնք անապատի։

Բլուրք ցնծութիւն զգեցցին, և զգեցցին խոյք մաքեաց։

Հովիտք բազում արասցեն ցորեան, աղաղակեսցեն և օրհնեսցեն։

## Ջկնէ Օրթի

### Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի ։ Ի. 17 ։

### Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Իբրև ելանէր յԵրուսաղէմ, ա՛ռ զերկոտասանսն առանձինն, և ի ճանապարհին ասէ ցնոսա. Ահաւասիկ ելանեմք յԵրուսաղէմ, և որդի մարդոյ մատնեսցի քահանայապետից և դպրաց, և դատապարտեսցեն զնա ի մահ, և մատնեսցեն զնա հեթանոսաց՝ այպանել և հարկանել և ի խաչ հանել, և յերիր աւուր յարիցէ։ Յայնժամ մատեաւ առ Նա մայր որդւոցն Զեբեդեայ՝ որդւովք իւրովք հանդերձ, երկիր պագանէր և խնդրէր ինչ ի Նմանէ։ Եւ Նա ասէ ցնա. զի՞նչ կամիս։ Ասէ ցնա. ասա՛ զի նստցին սոքա երկու որդիքս իմ՝ մի ընդ աջմէ քումմէ և մի ընդ ահեկէ յարքայութեան քում։ Պատասխանի ետ Յիսուս և ասէ. ոչ գիտէք զինչ խնդրէք. կարէ՞ք ըմպել զբաժակն զոր ես ըմպելոյն եմ, կամ զմկրտութիւնն զոր ես մկրտելոցն եմ մկրտել։ Ասեն ցնա. կարող եմք։ Ասէ ցնոսա Յիսուս. զբաժակն իմ ըմպիցէք, և զմկրտութիւնն զոր ես մկրտելոց եմ՝ մկրտիցիք, բայց նստուցա-

նել ընդ աջմէ և ընդ ահեկէ իմմէ՝ ոչ է իմ տալ, այլ որոց տուեալ է ի Հօրէ իմմէ: Եւ լուեալ տասանցն, բարկացան ի վերայ երկուցն եղբարց: Յիսուս կոչեաց զնոսա առ ինքն, և ասէ. գիտէք՝ զի իշխանք ազգաց տիրեն նոցա, և մեծամեծքն իշխեն նոցա: Ոչ այնպէս իցէ և ի ձերում միջի. այլ որ կամիցի ի ձէնջ մեծ լինել՝ եղիցի ձեր պաշտօնեայ, և որ կամիցի ի ձէնջ առաջին լինել՝ եղիցի ձեր ծառայ: Որպէս որդի մարդոյ ոչ եկն պաշտօն առնուլ, այլ պաշտել. և տալ զանձն իւր փրկանս փոխանակ բազմաց: 28:

Աղօ. Քար. Խնդր: կեցո: է Ըն-: Աղ. Թագաւոր խաղ:

---

# ԱՒԱԳ
# ԵՐԵՔՇԱԲԱԹԻ․ ԲԿ

## Ի ԳԻՇԵՐԻ

### ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԲԳ

ԻՄԱՍՏՈՒԹԻՒՆ կուսանքըն պատրաստեալ իւղ լապտերաց. ելին ընդ առաջ երկնաւոր փեսային վառեալ լապտերօք: Իսկ յիմարացն կուսիցն ունայնացեալք ի յիւղոյ. անպատրաստ գըտան զալլըստեան փեսային շիջեալ լապտերօք: Վասն որոյ եւ մեք պատրաստեսցուք իւղ հոգեւոր. զի մտցուք ի յառագաստ անմահ փեսային վառեալ լապտերօք:

† Յորժամ յերկնից փառօք գաս Քրիստոս Նստուս յաթոռ դատողական. եւ բաժանես զազգս ամենայն յաջակողմեանըն քում դասեա ըզմեզ ընդ օղեացն: Յորժամ զտաղանդ պատուիրանին պահանջեսցես ի ծառայից. ընդ կըրկնաշահ քանքարացն արժանացո ըզմեզ Քրիստոս ուրախութեան քո յերկինս:

Ճառագայթ փառաց Հօր Որդիդ միածին. որ ըզ-լոյդ անվայրափակ մարմնով պարագրեալ. այսօր ի

Թաբօր փառօք փայլեցեր : Որ անտես սրովբէից ան-
հաս ես վեր քան զզգայն . ծառայի կերպիւ պարածածկեալ
ընդ լուսոյ անըստուեր . այսօր ի Թաբօր փառօք փայլեցեր:
Որ հրեղինացն անմերձենալի հուր աստուածութեամբդ.
ի հողեղէնս խոնարհեալ լուսոյ արփիական . այսօր :

Ուրախ լեր եկեղեցի սուրբ . ի գալստեան սուրբ
Միածնին . ուրախ լեր եւ ցնծա հանդերձ ամենայն
սրբովք : Խնդա յոյժ դուստր վերին Սիոնի .
ահա Թագաւոր քո գայ նստեալ ի յաւանակի նորոյ .
արդար եւ փրկիչ փրկէ եւ կեցուցանէ : Զուարճա-
ցիր եւ բերկրեա ժողովուրդ Աստուծոյ . մատո զոստս
ծաղկեալս հաւատով եւ ասա . օրհնեալ որ եկիրդ
Թագաւոր տիեզերաց :

Դատաւոր արդարութեան հաստատեցեր ի մեզ
զմիտս մեր . դատել զհոգիս և զմարմինս . արդա-
րապէս դատմամբ ըստ օրինաց քոց Քրիստոս : Իսկ
անիրաւ դատաւորին որ ի քաղաք բնութեան մերոյ .
ոչ ունելով զերկիւղ քո սուրբ . եւ անպատկառ ի
մարդկանէ ոչ առնելով դատ զորկելոյն : Այլ ան-
մահ սուրբ փեսայիդ այրի հոգի իմ պաղատի . ուսա
զիրաւունս քո խնդրում դատաւորիս . առնել ինձ դա-
տաստան արդար ընդ ոսոխի մարմնոյ իմոյ : Մա-
րիամ կոյս անարատ զանապական փեսայդ աղա-
չեա . զի հաշտեսցի ընդ այրի եղեալ հոգիս . և մխի-
թարեսցի դարձեալ սիրով ընդ հեռացեալս ի նմանէ :

Ամենայն երկիր . տուք փառս Աստուծոյ մերում . որ էկն
եւ փրկեաց զմեզ : Ամենայն հոգիք . ձայնիւ ցըն-
ծութեամբ . բարեբանեցէք զՏէր : Զի եցոյց
մեզ Տէր . զփրկութիւն եւ զկեանս . յազգէ-
տանն Իսրայելի :

Հգ. Իջեր Տէր ողորմութեամբ քո յաշխարհս. եւ ըզմե-ռեալ բնութիւնս ի կենդանս վերափոխեցեր։ Ելեր Տէր առ Հայր փառօք ի յերկինս. եւ մխիթարիչ առաքե-լոցն առաքեցեր սուրբ զՀոգին։ Բացեր Տէր այսօր ըզդրանց երկնային. եւ բաշխեցեր առատապէս պար-գեւս աղքատ բնութեանս։

Հն. Գալոց է Միածինն փողով և փառօք Հօր. եւ ըզհողեղէն բնութիւնս հրեղէն նորոգէ։ Լուսաւոր են ճանապարհք արդարոց. և ի բեւեռաւոր բանակս հրեշտակաց ամպովք ընթանան։ Ի վերինն Երու-սաղէմ թռչին ամպովք ընդ առաջ Տեառն յօդս. եւ այնպէս յամենայն ժամ ընդ Տեառն լինին։

Մծ. Ընդ քեզ Աստուածածին որ վերօրհնեալ ի զօրաց հրեշտակաց. ‖ ազգ մարդկան կենդանեաց մեծացու-ցանեմք։ Ընդ քեզ բնակ հրեղէն աստուածութեանն յի-մանալի զօրացն երանեալ. ազգ։ Ընդ քեզ մայր Էմ-մանուէլի մարգարէին յառաջ գուշակեալ. ազգ։

Խջ. Ի վերայ վիմի հաւատոյ շինեցեր ըզքո սուրբ զեկեղեցի, ըզոր պահեա ի խաղաղութեան։ Որ շնորհեցեր ողորմութիւն ի բնակարանս հրեշտակաց եւ մարդկան քաւարան. տուր սմա զանշարժ քո զխաղաղութիւն։ — Փառք Հօր։ Ի տաճարի փառաց սրբութեան քո քեզ երգեն մանկունք. տուր սոցա զառատ քո զողորմութիւն։

— Այժմ և միշտ։ Յորժամ կոչես ըզհրաւիրեալսն ի սկըզբանէ աշխարհի. ժառանգել ըզպատրաստեալն. շնորհեա մեզ ընդ նոսին զարքայութիւն քո Քրիստոս։

Մաղթանք. Փառք հրաշափառ տէրութեան։
Ալէլուիա. Աւագ Երեքշաբաթին. Կացցէ դշխոյ։

Digitized by Google

## Ց Ա Ռ Ա Ւ Օ Տ Ո Ւ

### ՀԱՐՑ ԲՁ

Որ սքանչելիդ ես ի բարձունըս Տէր և ահաւոր ի մէջ երկրի անուն քո սուրբ. ‖ օրհնեալ ես Աստուած հարցըն մերոց։ Որ զհաւատացեալսն ի քեզ պահեալ և ըզչարսըն պատժեալ. գործակցօք ջրովք ստուղմամբ յանդորունդս. օրհնեալ։ Որ հաստատեցեր ազգի մարդկան հրով փորձել ի յերկրորդումըն պահեա անարատ ըզքո փրկեալըս. օրհնեալ։

Գ. ԸզՏէր օրհնեցէք ‖ Է՟ւ բարձր արարէք ըզնա յաւիտեան։ Օրհնեցէք զԹագաւորըն յաւիտենից Քրիստոս որ եկն և փրկեաց զամենայն արարածս Է՟ւ։ Օրհնեցէք Որ արար զայլըստեամբն հրով. զփրկութիւն որդւոց մարդկան Է՟ւ։ °Խոժոր արարածք պատուեալք ի հրեշտակաց զերծեալք ի խաւարէ անլոյս Է՟ւ։

### ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԲՁ

Զկուսութիւնդ քո Աստուածածին անարատ։ 303։

### ՈՂՈՐՄԵԱ ԲՁ

Թիւնս իմ Թագաւոր փառաց քեզ սպասեցուք պատրաստեալք արթնութեամբ. ընդառաջել որ գաս ի դատել զերկիր։ °Անաղօտ վառեալ լապտերըք հաւատոյ ընդ դասս իմաստուն կուսանացըն մըտանել ի յառագաստ ընդ երկնաւոր փեսային։ °Փութասցուք կանխեալ յառաջ քան ըզձայն աստուածային բարբառոյն. զի մի մնասցուք արտաքս ընդ չիմաստն հինգ կուսանացն։

### ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԲՁ

Որ նըստիս ի քրովբէս Աստուած Բանդ. այսօր վասըն մեր խոնարհութեամբ նըստար ի լերինըն ձի-

թենեաց. ‖ օրհնեմք ըզքեզ անդադար երգով: Որ համագոյդ ես խորհըրդոցըդ հայրենի. աշակերտաց քոց ծանուցեր ըզխորհուրդ քո գալըստեանն. օրհնեմք: Որ ամենայնից ես արարիչ եւ ըստեղծիչ կենդանութեան. այսօր ըզծածկեալ խորհուրդ Երրորդութեանըդ յայտնեցեր եկեղեցւոյ սըրբոյ քո. օրհնեմք:

Առաւօտու Երգ

Տարցին թագաւորի կուսանք զհետ նորա, և զընկերս նորա տարցին նմա:
Ածցեն ցնծութեամբ և ուրախութեամբ, և տարցին ի տաճար թագաւորի:

Քար. Փառաւորեսցուք:

ՄԱՆԿՈՒՆՔ Գ Ձ

Ահաւոր ես թագաւոր քրովբէական ձայնիւ օրհնեալ. ի յերկինս ի յերկրի եւ յամենայն ժամանակի: Ահաւոր ես թագաւոր որ նորոգես զքո զարարածս. հաստատեալս ի հաւատս ի գիտութիւն ճըշմարտութեան: Լուսաւորեա ըզմեզ Քրիստոս ի միւսանգամ քո գալըստեանն. յորժամ ծագես ի յերկնից եւ նորոգես զքո զարարածս:

Քոր. Վասն խաղաղութեան: Աղ. Սուրբ ես Տէր:

Աղօ. ՍԱՂՄՈՍ ԽԴ. ողբոյն.

48. Տարցին թագաւորի կուսանք զհետ նորա, և զընկերս նորա տարցին նմա:
Փխ. Բղխեսցէ սիրտ իմ զպատգամս բարիս, և ասեմ զգործս իմ թագաւորի:
Լեզու իմ որպէս գրիչ արագագիր դպրի, գեղեցիկ տեսանելով քան զամենայն որդիս մարդկան:
Սփռեցան շնորհք ի շրթանց քոց, վասն այսորիկ օրհնեաց զքեզ Աստուած յաւիտեան:
Ած զսուր ընդ մէջ քո, հզօր, վայելչութեան և գեղոյ քո:

Digitized by Google

Լարեա ուղղեա և թագաւորեա վասն ճշմարտութեան հեզութեան և արդարութեան. և առաջնորդեսցէ քեզ սքանչելապէս աջ քո։

Նետք քո սրեալ են հզօր. և ժողովուրդք ի ներքոյ անկցին, ի սիրտս թշնամեաց թագաւորի։

Աթոռ քո Աստուած յաւիտեանս յաւիտենից, գաւազան ուղղութեան գաւազան արքայութեան քո։

Սիրեցեր զարդարութիւն, և ատեցեր զանօրէնութիւն։

Վասն այսորիկ օծ զքեզ Աստուած, Աստուած քո, իւղով ուրախութեան առաւել քան զընկերս քո։

Զմուռս և ստաշխն և կասիա ի զգեստէ քումմէ, ի տաճարաց փղոսկրէից, ուստի ուրախ արարին զքեզ դստերք թագաւորաց ի պատիւ։

Կացցէ դշխոյ ընդ աջմէ քումմէ, ի հանդերձս ոսկեհուռս զարդարեալ և պաճուճեալ։

Լուր դուստր և տես, խոնարհեցո զունկն քո. մոռա զժողովուրդ քո և զտուն հօր քո, զի ցանկացաւ թագաւոր գեղոյ քո։

Սա ինքն է Տէր քո, երկիր պագցես սմա, և դուստր Տուրայ երկիր պագցէ սմա. և պատարագօք զերեսս սորա պաղատեսցեն մեծամեծք ի ժողովրդոց։

Ամենայն փառք դստեր թագաւորի ի ներքոյ, ի վերջաւորս ոսկեհուռս զարդարեալ և պաճուճեալ։

Տարցին թագաւորի կուսանք զհետ նորա, և զընկերս նորա տարցին նմա։

Ածցեն ցնծութեամբ և ուրախութեամբ և տարցին ի տաճար թագաւորի, և փոխանակ հարց քոց եղիցին որդիք քո։

Կացուսցես զնոսա իշխանս ընդ ամենայն երկիր, յիշեսցի անուն քո ընդ ամենայն ազգս ազգաց։

Վասն այսորիկ ժողովուրդք խոստովան եղիցին առ քեզ, յաւիտեան և յաւիտեանս յաւիտենից։

## ԶԿՆԻ ՕՐԹԻ

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մարկոսի։ ԺԲ. 13։

Առ Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ առաքեն զոմանս ի փարիսեցւոց անտի և ի հե-

Digitized by Google

րովդիանոսաց, զի զնա որսասցեն բանիւ։ Եւ Նոքա եկեալ հարցանէին զնա նենգութեամբ և ասէին. վարդապետ, գիտեմք զի ճշմարիտ ես, և ոչ ինչ փոյթ է քեզ զումեքէ. զի ոչ հայիս յերեսս մարդկան, այլ ճշմարտութեամբ զճանապարհն Աստուծոյ ուսուցանես. արդ ասա մեզ, արժա՞ն է հարկս տալ կայսեր՝ եթէ ոչ. տացո՞ւք՝ եթէ ոչ տացուք։ Եւ Յիսուս գիտաց զկեղծաւորութիւն նոցա, ասէ ցնոսա. զի՞ փորձէք զիս կեղծաւորք. բերէք ինձ դահեկան մի զի տեսից։ Եւ Նոքա բերին. և ասէ ցնոսա. ո՞յր է պատկերս այս կամ գիր։ Եւ Նոքա ասեն ցնա. կայսեր։ Պատասխանի ետ Յիսուս և ասէ ցնոսա. երթայք տուք զկայսերն՝ կայսեր, և զԱստուծոյն՝ Աստուծոյ։ Եւ զարմացան ընդ Նա։ Գան առ Նա սադուկեցիքըն որ ասեն՝ թէ չիք յարութիւն. հարցանէին ցնա և ասէին. վարդապետ, Մովսէս գրեաց մեզ, եթէ ուրուք եղբայր մեռանիցի, և թողուցու կին և որդի ոչ թողուցու, զի առցէ եղբայր նորա զկինն նորա և յարուցէ զաւակ եղբօր իւրում։ Արդ եղբարք եօթն էին առ մեզ. առաջինն ա՛ռ կին՝ և մեռաւ, և ոչ եթող զաւակ։ Եւ երկրորդն ա՛ռ զնոյն, և մեռաւ, և ոչ նա եթող զաւակ. նոյնպէս և երրորդն ա՛ռ զնոյն, և եօթնեքեան իսկ, և ոչ թողին զաւակ. յետ ամենեցուն մեռաւ և կինն։ Արդ ի յարութեան յորժամ յառնիցեն, ո՞յր ի նոցանէ լինիցի կինն, զի եօթնեքեան կալան զնա կին։ Պատասխանի ետ Յիսուս և ասէ ցնոսա. ո՞չ վասն այգորիկ իսկ մոլորեալ էք, զի ոչ գիտէք զգիրս և ոչ ըզզօրութիւնն Աստուծոյ։ Զի յորժամ ի մեռելոց յարիցեն, ոչ արք կանայս առնեն. և ոչ կանայք արանց լինին. այլ իբրև զհրեշտակս իցեն՝ որ յերկինսն են։ Այլ վասըն յարութեան մեռելոց զի յառնեն, ո՞չ իցէ ընթերցեալ ձեր ի գիրսն Մովսեսի՝ ի մորենւոջն որպէս ասաց ցնա Աստուած. ես եմ ասէ՝ Աստուած Աբրահամու և Աստուած Իսահակայ և Աստուած Յակովբայ. և ոչ է Աստուած մեռելոց՝ այլ կենդանեաց. և արդ դուք յոյժ մոլորեալ էք։ Եւ մատուցեալ մի ոմն ի դպրացն՝ լսէր նոցա մինչ վիճէինն. իբրև ետես թէ բարւոք ետ նոցա զպատասխանին, եհարց ցնա և ասէ. ո՞ր պատուիրան է առաջին։ Եւ Յիսուս ասէ ցնա. առաջին քան զամենայն, լուր Իսրայէլ, Տէր Աստուած մեր՝ Տէր մի է. և

գի, և յամենայն սողնոց երկրի ըստ ազգի իւրեանց. երկու երկու յամենայնէ մտանիցեն առ քեզ կերակրել ընդ քեզ՝ արու և էգ։ Եւ դու առնուցուս քեզ յամենայն կերակրոց զոր ուտիցէք, և ժողովեսցես դու առ քեզ. և եղիցի քեզ և նոցա կերակուր։ Եւ արար Նոյ զամենայն զոր միանգամ պատուիրեաց նմա Տէր Աստուած, նոյնպէս և արար։ Եւ ասէ Տէր Աստուած ցՆոյ. մուտ դու և ամենայն տուն քո ի տապանդ. զի զքեզ տեսի արդար առաջի իմ յազգիդ յայդմիկ. և յամենայն անասնոց սրբոց մոյծ ընդ քեզ եօթն եօթն արու և էգ, և յամենայն անասնոց որ ոչ են սուրբ, երկուս երկուս արու և էգ։ Եւ ի թռչնոց երկնից սրբոց՝ եօթն եօթն արու և էգ, և ի թռչնոց որ ոչ սուրբ են՝ երկու երկու արու և էգ, բուծանել զաւակ ի վերայ ամենայն երկրի։ Եւ այլ ևս եօթն օր, և ածից ես անձրև ի վերայ երկրի զքառասուն տիւ և զքառասուն գիշեր, և ջնջեցից զամենայն հասակ զոր արարի յերեսաց երկրէ։ Եւ արար Նոյ զամենայն, զոր միանգամ պատուիրեաց նմա Տէր Աստուած։ Նոյ էր ամաց վեց հարիւրոց, և ջրհեղեղ ջուրցն եղև ի վերայ երկրի, և եմուտ Նոյ և որդիք իւր և կին նորա և կանայք որդւոց նորա ընդ նմա ի տապանն վասն ջուրցն հեղեղի։ Եւ ի թռչնոց սրբոց, և ի թռչնոց որ ոչ սուրբ էին, և յանասնոց սրբոց, և յանասնոց որ ոչ սուրբ են, և յամենայն սողնոց որ սողեն ի վերայ երկրի, երկու երկու մտին առ Նոյ ի տապան անդր՝ արու և էգ, որպէս պատուիրեաց նմա Տէր Աստուած։ Եւ եղև յետ եօթն աւուր, և ջուր ջրհեղեղին եղև ի վերայ երկրի, յամին վեցհարիւրորդի կենացն Նոյի, յերկրորդում ամսեանն ի քսան և յեօթն ամսոյն։ Եւ պատառեցան ամենայն աղբիւրք անդնդոց բազմաց, և սահանք երկնից բացան, և եղև անձրև ի վերայ երկրի զքառասուն տիւ և զքառասուն գիշեր։ Յաւուր յայնմիկ եմուտ Նոյ, Սէմ, Քամ, Յաբեթ որդիք Նոյի, և կին Նոյի, և երեք կանայք որդւոց նորա ընդ նմա ի տապան անդր. Նոքա և ամենայն գազանք ըստ ազգի, և ամենայն անասուն ըստ ազգի իւրեանց, և ամենայն սողուն շարժուն ի վերայ երկրի ըստ ազգի իւրեանց, և ամենայն հաւ թռչուն ըստ ազգի իւրում, մտին առ Նոյ ի տապան անդր երկու երկու յամենայն մարմնոյ յորում

է շունչ կենդանի. և որ մտանէին՝ արու և էգ յամե-
նայն մարմնոյ մտանէին, որպէս պատուիրեաց Աստուած
Նոյի։ Եւ փակեաց Տէր Աստուած արտաքոյ Նորա զտա-
պանն. և եղև ջրհեղեղ զքառասուն տիւ և զքառասուն
գիշեր ի վերայ երկրի. և բազմացաւ ջուրն և վերացոյց
զտապանն և բարձրացաւ յերկրէ. և զօրանայր ջուրն և
բազմանայր յոյժ ի վերայ երկրի, և շրջէր տապանն ի
վերայ ջրոց։ Եւ սաստկանայր ջուրն յոյժ յոյժ ի վերայ
երկրի, և ծածկէր զամենայն լերինս բարձունս որ էին
ի ներքոյ երկնից. հնգետասան կանգուն բարձրացաւ
ջուրն ի վեր, և ծածկեաց զամենայն լերինս։ Եւ մե-
ռաւ ամենայն մարմին շարժուն ի վերայ երկրի, թռ-
չնոց և անասնոց և գազանաց. և ամենայն սողուն զե-
ռուն ի վերայ երկրի, և ամենայն մարդ. և ամենայն
որ ունէր շունչ կենդանի յռունգունս իւր, և ամենայն որ
ինչ էր ի վերայ ցամաքի՝ մեռաւ։ Եւ ջնջեաց զամենայն
հաստատ որ էր ի վերայ երեսաց երկրի, ի մարդոյ մինչև
յանասուն և ի սողնոց մինչև ի թռչունս երկնից, և
ջնջեցան յերկրէ. և մնաց միայն Նոյ և որ ընդ Նմա էին
ի տապանի անդ։ Եւ բարձրացաւ ջուրն ի վերայ երկրի
աւուրս հարիւր և յիսուն։ Եւ յիշեաց Աստուած զՆոյ և
զամենայն գազանս և զամենայն անասունս և զամենայն
թռչունս որ էին ընդ Նմա ի տապանի անդ. և ած Աս-
տուած հողմ ի վերայ երկրի, և դադարեաց ջուրն. և
խցան աղբիւրք անդնդոց և սահանք երկնից, և ար-
գելաւ անձրև յերկնից. և գիջանէր տակաւ, երթայր
ջուրն և թուլանայր յերկրէ և նուազէր ջուրն յետ
հարիւր և յիսուն աւուր։ Եւ. Նստաւ տապանն յեօթ-
ներորդում ամսեանն ի քսան և յեօթն ամսոյն ի լե-
րինս Արարատայ. և ջուրն երթայր և նուազէր մինչև
ի տասներորդ ամիսն. իսկ յամսեանն մետասաներոր-
դի, որ օր առաջին էր ամսոյն՝ երևեցան գլուխք լե-
րանց։ Եւ եղև յետ քառասուն աւուր եբաց Նոյ զպա-
տուհան տապանին զոր արար. և արձակեաց զագռաւն,
և ել և անդրէն ոչ դարձաւ մինչև ցցամաքել ջրոյն յեր-
կրէ։ Եւ արձակեաց զաղաւնին զհետ Նորա՝ տեսանել թէ
ցածուցեալ իցէ ջուրն յերեսաց երկրէ։ Եւ չգտեալ ա-
ղաւնոյն հանգիստ ոտից իւրոց՝ դարձաւ անդրէն առ Նա
ի տապան անդր. զի ջուր դեռ ունէր զամենայն երեսս

Digitized by Google

երկրի. և ձգեաց զձեռն և ընկալաւ զնա, և ած զնա անդրէն առ իւր ի տապանն անդր: Եւ դադարեաց ևս աւուրս եօթն, և դարձաւ արձակեաց զաղաւնին ի տապանէ անտի. և դարձաւ առ նա աղաւնին ընդ երեկս, և ունէր տերև ձիթենւոյ շիղ ի բերան իւրում. և գիտաց Նոյ, թէ ցածուցեալ են ջուրքն յերկրէ: Եւ դադարեաց աւուրս եօթն ևս, և դարձեալ արձակեաց զաղաւնին. և ոչ ևս յաւել դառնալ առ նա: Եւ եղև ի վեցհարիւրորդի և ի միում ամի կենաց Նոյի, յամսեանըն առաջնում որ օր մի էր ամսոյն, նուազեաց ջուրն յերեսաց երկրէ: Եւ եբաց Նոյ զձեղուն տապանին զոր արար. և ետես զի նուազեալ էր ջուրն յերեսաց երկրէ. Իսկ յամսեանն երկրորդի, որ օր քսան և եօթն էր ամսոյն՝ ցամաքեցաւ երկիր: Եւ խօսեցաւ Տէր Աստուած ընդ Նոյի և ասէ. ել ի տապանէ այտի դու և կին քո և որդիք քո և կանայք որդւոց քոց ընդ քեզ, և ամենայն գազանք որ են ընդ քեզ, և ամենայն մարմին ի թռչնոց մինչև ցանասունս. և զամենայն սողուն զեռուն երկրի հան ընդ քեզ, և զեռասցեն ի վերայ երկրի. և աճեցէք և բազմացարուք ի վերայ երկրի: Եւ ել Նոյ և կին նորա և որդիք նորա և կանայք որդւոց նորա ընդ նմա, և ամենայն գազանք և ամենայն սողուն շարժուն և ամենայն թռչուն յերկրէ ըստ ազգի իւրեանց՝ ելին ի տապանէ անտի: Եւ շինեաց Նոյ սեղան Աստուծոյ, և առ յամենայն անասնոց սրբոց և յամենայն թռչնոց սըրբոց և եհան ողջակէզ ի վերայ սեղանոյն. և հոտոտեցաւ Տէր Աստուած ի հոտ անուշից: Եւ ասէ Տէր Աստուած՝ ածեալ զմտաւ. ոչ ևս յաւելից անիծանել զերկիր վասն գործոց մարդկան. զի միտք մարդկան հաստատեալ են ի խնամս չարի ի մանկութենէ իւրմէ: Արդ ոչ ևս յաւելից հարկանել զամենայն մարմին կենդանի որպէս արարի. այսուհետև զամենայն աւուրս երկրի՝ սերմն և հունձք, ցուրտ և տօթ, ամառն և գարուն, զտիւ և ըզգիշեր մի դադարեսցեն: Եւ օրհնեաց Աստուած զՆոյ և զորդիս նորա, և ասէ ցնոսա. աճեցէք և բազմացարուք և լցէք զերկիր և տիրեցէք դմա. և ահ և երկիւղ ձեր եղիցի ի վերայ ամենայն գազանաց երկրի, և ի վերայ ամենայն թռչնոց երկնից, և ի վերայ ամենայն զեռնոց երկրի, և ի վերայ ամենայն ձկանց ծովու, զորս ընդ

Digitized by Google

ձեռամբ ձերով ետու ։ Եւ ամենայն զեռուն որ է կենդանի , ձեզ լիցի ի կերակուր . իբրև զբանջար խոտոյ ետու ձեզ զամենայն ։ Բայց զմիս արեամբ շնչոյ մի՛ ուտիցէք . քանզի և զձեր արիւն շնչոյ խնդրեցից , ի ձեռաց ամենայն գազանաց խնդրեցից զնա և ի ձեռաց մարդոյ . ի ձեռաց առն զշունչ արեան եղբօր իւրոյ խնդրեցից ։ Որ հեղու զարիւն մարդոյ , փոխանակ արեան նորա հեղցի արիւն նորա . զի ի պատկեր Աստուծոյ արարի ես զմարդն . այլ դուք աճեցէք և բազմացարուք և լցէք զերկիր , և բազմացարուք ի վերայ դորա ։ Եւ խօսեցաւ Տէր Աստուած ընդ Նոյի և ընդ որդիս նորա որ ընդ նմա էին և ասէ . և ահաւասիկ ես հաստատեմ զուխտ իմ ընդ ձեզ , և ընդ զաւակի ձերում յետ ձեր . և ընդ ամենայն շնչոյ կենդանւոյ որ ընդ ձեզ են , ի թռչնոց և յանասնոց և յամենայն գազանաց երկրի որ ընդ ձեզ , և յամենեցունց որ ելին ի տապանէ անտի , և յամենայն անասնոց երկրի . և հաստատեցից զուխտ իմ ընդ ձեզ . և ոչ ևս մեռանիցի ամենայն մարմին ի ջրհեղեղէ , և ոչ ևս եղիցի ջրհեղեղ ջուրց ապականել զամենայն երկիր ։ Եւ ասէ Տէր Աստուած ցՆոյ . այս է նշան ուխտին զոր ես տաց ընդ իս և ընդ ձեզ , և ի մէջ ամենայն շնչոյ կենդանւոյ որ է ընդ ձեզ , յազգս յաւիտենից ։ Զաղեղն իմ եդից յամպս , և եղիցի ի նըշանակ յաւիտենական ուխտին ընդ իս և ընդ ամենայն երկիր ։ Եւ եղիցի ի գումարել ինձ զամպս ի վերայ երկրի , երևեսցի աղեղն իմ յամպս . և յիշեցից զուխտ իմ որ ընդ իս և ընդ ձեզ , և ի մէջ ամենայն շնչոյ կենդանւոյ յամենայն մարմին՝ և ոչ ևս եղիցի ջրհեղեղ ի սատակել զամենայն մարմին ։ Եւ եղիցի աղեղն իմ յամպս , և տեսից՝ յիշել զուխտն յաւիտենական ի մէջ իմ և ի մէջ ամենայն շնչոյ կենդանւոյ յամենայն մարմնի որ է ի վերայ երկրի ։ Եւ ասէ Աստուած ցՆոյ . այս է նշան ուխտին զոր ուխտեցի ես ընդ իս և ընդ ձեզ , և ի մէջ ամենայն մարմնոյ որ է ի վերայ երկրի ։ Թ . 17 ։

Ընթերցուած յԱռակաց ։ Թ . 1 ։

Իմաստութիւն շինեաց իւր տուն , և կանգնեաց սիւնըս եօթն ։ Զեն զզենլիս իւր , և խառնեաց ի խառնելիս զգինի իւր , և պատրաստեաց զսեղան իւր ։ Եւ առա-

Digitized by Google

*քեաց զծառայս իւր, կոչել բարձր քարոզութեամբ ի խառնելիս իւր՝ և ասէ. որ ոք իցէ անզգամ, եկեսցէ առ իս։ Եւ ցպակասամտան ասէ. եկայք կերայք ի հացէ իմմէ, և արբէք զգինի իմ զոր խառնեցի ձեզ։ Թողէք զանզգամութիւն և կեցջիք, խնդրեցէք զիմաստութիւն զի ապրեսջիք. և ուղղեցէք գիտութեամբ զհանճար, և ուղիղ ճանապարհաւ իմացարուք զխրատ։ Որ խրատէ զչարս՝ առցէ անձին իւրում անարգանս. և որ յանդիմանէ զամպարիշտն՝ ատեայ զանձն։ Մի՛ յանդիմաներ զչարս, զի մի՛ ատեսցեն զքեզ. յանդիմանեա զիմաստունն, և սիրեսցէ զքեզ. զանմիտն, և յաւելցէ ատել զքեզ։ Տուր իմաստնոյն պատճառս, և իմաստնագոյն ևս լիցի։ Տեղեկացո զարդարն, և յաւելցէ ընդունել։ Սկիզբն իմաստութեան՝ երկիւղ Տեառն, և խորհուրդ սրբոց՝ հանճար. իմանալ զօրէնս՝ մտաց առաւոտ է։ Այսու օրինակաւ բազում ժամանակս կեցցես, և յաւելցին քեզ ամք կենաց։ 11։*

ԸՆԹերցուած յԵսայեայ մարգարէէ։ Խ. 9։

*Ել ի վերայ լերինդ բարձու՝ աւետարանիչդ Սիովնի. բարձրացո զօրութեամբ զբարբառ քո՝ աւետարանիչդ Երուսաղեմի. բարձրացուցէք, մի՛ երկնչիք. ասա ցքաղաքսդ Յուդայ։ Ահաւասիկ Աստուած ձեր, ահաւասիկ Տէր, Տէր գայ զօրութեամբ և բազուկն տէրութեամբ իւրով. ահաւասիկ վարձք իւր ընդ իւր, և գործք առաջի նորա։ Իբրև հովիւ մի հովուեսցէ զխաշինս իւր, և բազկաւ իւրով ժողովեսցէ զգառինս, և ի ծոց իւր կրեսցէ զնոսա, և մխիթար լիցի յղեաց։ Ո՞ չափեաց ափով իւրով զջուրս, և զերկինս Թզաւ, և զերկիր ամենայն՝ քլաւ. ո՞ կշռեաց զլերինս կշռով, և զդաշտս կշռորդաք։ Ո՞ գիտաց զմիտս Տեառն, և ո՞ եղև նմա խորհրդակից՝ եթէ խելամուտ արասցէ զնա. կամ ընդ ո՞ւմ խորհեցաւ՝ և արար զնա խելամուտ, կամ ո՞ եցոյց նմա զդատաստան և զճանապարհ իմաստութեան, կամ ո՞ ետ նմա փոխ յառաջագոյն՝ և հատուցանիցէ նմա։ Եթէ ամենայն հեթանոսք իբրև զկաթիլ մի ի դուլէ են, և իբրև զմէտ մի ի կշռոց համարեցան, և իբրև չիթք ի բերանոյ համարեսցին։ Եթէ Լիբանան չէ բաւական յայրումն, և ամենայն չորքոտանիք չեն բաւական յողջա-*

Digitized by Google

կէզս ։ Եւ ամենայն հեթանոսք ոչ ինչ են, և յոչ ինչ համարեցան նմա ։ 17 ։

Ապ․ շՈւղիղ եղիցին ․․․․ ։ Քար․ Աղաչեսցուք ։

ՀԱՄԲԱՐՁԻ ԲՁ

Շնորհեա մեզ Տէր արթնութիւն ընդ իմաստուն կուսանացն. եւ զհոգւոց մերոց լապտերս պայծառացո ։ Երկնչիմք ի քէն Տէր զարհուրեալք ի պատասխանւոյն. զամէննն ասելով եթէ ոչ գիտեմ ըզձեզ ։ Յորժամ գաս փառօք Հօր դատել ըզտիեզերս ամենայն. շնորհեա մեզ Տէր կալ ի յաջմէ քումմէ ։ Բացցէ մեզ զդուռն ողորմութեանն երկնաւոր փեսային. եւ մտցուք ի յառագաստ ընդ իմաստուն կուսանսն ։ Համաձայնեսցուք ընդ առաջ փեսային և մտցուք ի յառագաստ նորա. զի մի մնասցուք արտաքս որպէս զյիմար կուսանսն ։ Պայծառասցին լապտերք. հոգւոց մերոց. եւ բազմեցուսցես ըզմեզ ընդ հրաւիրեալսն ի կոչումն արքայութեանն երկնից ։

Քար․ Վասն խաղաղութեան ։ Աղօթք․ Հայր գթած ։

Ապ․ ՍԱՂՄՈՍ ԻԴ․ ողբոյն․

Առ քեզ Տէր համբարձի զանձն իմ. Աստուած իմ ի քեզ յուսացայ՝ մի ամաչեցից, և մի ծիծաղեսցին զինև թշնամիք իմ ։

Ամենեքեան որք համբերեն քեզ՝ մի ամաչեսցեն, այլ ամաչեսցեն անօրէնք յունայնութեան իւրեանց ։

Զճանապարհս քո Տէր ցոյց ինձ, և զշաւիղս քո ուսո ինձ ։

Առաջնորդեա ինձ ի ճշմարտութեան քում և ուսո զիս, զի դու ես Աստուած փրկիչ իմ. և ես քեզ համբերի զօրհանապազ ։

Յիշեա Տէր զգթութիւնս քո և զողորմութիւնս որ են յաւիտենից ։

Զմեղս մանկութեան իմոյ և զանգիտութեան իմոյ մի

յիշեր, այլ յիշեա զիս Տէր ըստ ողորմութեան քում վասն քաղցրութեան քո, զի քաղցր և ուղիղ ես Տէր։

Վասն այսորիկ օրէնսդէտ առնես զմեղաւորս ի ճանապարհի, առաջնորդես հեզոց ի դատաստանի, ուսուցանես հեզոց զճանապարհս քո։

Ամենայն ճանապարհք Տեառն ողորմութեամբ և ճշմարտութեամբ են այնոցիկ, որ խնդրեն զուխտ և ըզվկայութիւն Նորա։

Վասն անուան քո Տէր քաւեա զմեղս իմ, զի բազում եղեն. ո՞վ է մարդ որ երկնչի ի Տեառնէ. օրէնսդէտ առնէ զնա ի ճանապարհ յոր և հաճեցաւ։

Անձն Նորա ի բարութեան հանգիցէ, և զաւակ Նորա ժառանգեսցէ զերկիր։

Զօրութիւն է Տէր երկիւղածաց իւրոց, և զկտակարանս իւր ուսուցանէ նոցա։

Աչք իմ յամենայն ժամ առ Տէր, և Նա հանէ յորոգայթէ զոտս իմ։

Նայեա առ իս և ողորմեա ինձ, զի միամօր և աղքատ եմ ես։

Նեղութիւնք սրտի իմոյ բազում եղեն յոյժ, և ի վըշտաց իմոց հան զիս։

Տես զխոնարհութիւն իմ և զվաստակ իմ, և թող ինձ զամենայն մեղս իմ։

Տես զթշնամիս իմ՝ զի բազում եղեն, ատելութիւն զոր ի նանիր ատեցին զիս։

Պահեա զանձն իմ և փրկեա զիս, և մի՛ յամօթ եղէց՝ զի յուսացայ ի քեզ։

Անբիծք և ուղիղք կցորդք եղեն ինձ, և ես քեզ համբերի. փրկեա Աստուած զԻսրայէլ յամենայն նեղութեանց Նորա։

## ԶԿՆԻ ՕՐԹԻ

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի։ իդ. 1։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ ելեալ արտաքս ի տաճարէն՝ գնայր, և մատեան աշակերտքն ցուցանել Նմա զշինուածս տաճարին։ Եւ Նա պատասխանի ետ և ասէ ցնոսա. տեսանէ՞ք զայդ ամենայն. ամէն ասեմ ձեզ, ոչ մնասցէ այդր քար ի քարի

վերայ որ ոչ քակտեսցի։ Եւ մինչդեռ նստէր ի լերինն ձիթենեաց, մատեան առ նա աշակերտքն առանձինն և ասեն. ասա մեզ՝ ե՞րբ լինիցի այդ. և կամ զի՞նչ նշան իցէ քոյոյ գալստեանն և վախճանի աշխարհիս։ Պատասխանի ետ Յիսուս և ասէ ցնոսա. զգոյշ լերուք՝ գուցէ ոք զձեզ խաբիցէ. զի բազումք գայցեն յանուն իմ, և ասիցեն՝ թէ ես եմ Քրիստոսն, և զբազումս մոլորեցուցանիցեն։ Լսելոց էք պատերազմունս և համբաւս պատերազմաց. զգոյշ լերուք՝ մի՛ խռովեսջիք, զի պարտ է լինել այնմ ամենայնի, այլ չև է կատարած։ Յարիցէ ազգ յազգի վերայ, և թագաւորութիւն ի թագաւորութեան վերայ. և եղիցին սովք և սրածութիւնք և սասանութիւնք ի տեղիս տեղիս. սակայն և այն ամենայն՝ սկիզբն է երկանց։ Յայնժամ մատնեսցեն զձեզ ի նեղութիւնս, և սպանանիցեն զձեզ. և եղիջիք ատեցեալք յամենայն ազգաց վասն անուան իմոյ։ Եւ յայնժամ գայթագղեսցեն բազումք, և զմիմեանս մատնեսցեն և ատեսցեն զմիմեանս, և բազում սուտ մարգարէք յարիցեն, և զբազումս մոլորեցուցեն։ Եւ վասն բազմանալոյ անօրէնութեանն՝ ցամաքեսցի սէր բազմաց. բայց որ համբերեսցէ ի սպառ, նա կեցցէ։ Եւ քարոզեսցի աւետարանս արքայութեան ընդ ամենայն տիեզերս՝ ի վկայութիւն ամենայն հեթանոսաց, և ապա եկեսցէ կատարած։ Արդ յորժամ տեսանիցէք զպղծութիւն աւերածոյն, որ ասացեալն է ի ձեռն Դանիելի մարգարէի, զի կայցէ ի տեղւոջն սրբութեան, որ ընթեռնու՝ ի միտ առցէ։ Յայնժամ որ ի Հրէաստանի իցեն՝ փախիցեն ի լերինս, և որ ի տանիս կայցէ՝ մի՛ իջցէ առնուլ ինչ ի տանէ իւրմէ. և որ յանդի իցէ՝ մի՛ դարձցի յետս առնուլ զձորձս իւր։ Բայց վայ իցէ յղեաց և ստնտուաց յաւուրսն յայնոսիկ։ Յաղօթս կացէք՝ զի մի՛ լինիցի փախուստն ձեր ձմերանի, և մի՛ ի շաբաթու։ Զի եղիցի յայնժամ նեղութիւն մեծ, որպիսի ոչ եղև ի սկզբանէ արարածոց աշխարհի մինչև ցայժմ, և ոչ այլ լիցի։ Եւ եթէ ոչ կարճէին աւուրքն այնոքիկ, ոչ ապրէր ամենայն մարմին. բայց վասն ընտրելոցն կարճեսցին աւուրքն այնոքիկ։ Յայնժամ թէ ոք ասիցէ ձեզ՝ ահաւասիկ աստ է Քրիստոսն կամ անդ, մի՛ հաւատայցէք։ Զի յարիցեն սուտ քրիստոսք և սուտ մարգարէք, և տայցեն նշանս մեծամեծս և արուեստս,

Digitized by Google

մինչև մոլորեցուցանել՝ թէ հնար ինչ իցէ՝ և զընտրեալսն. ահա յառաջագոյն ասացի ձեզ: Ապա թէ ասիցեն ձեզ, ահաւասիկ յանապատի է, մի՛ ելանիցէք. և թէ ահա յշտեմարանս է, մի՛ հաւատայցէք: Զի որպէս փայլակն՝ որ ելանէ յարևելից և երևի մինչև յարևմուտս, այնպէս եղիցի գալուստն որդւոյ մարդոյ: Զի ուր գէշն իցէ, անդր ժողովեսցին արծուիք: Վաղվաղակի յետ նեղութեան աւուրցն այնոցիկ՝ արեգակն խաւարեսցի, և լուսին ոչ տացէ զլոյս իւր, և աստեղք անկցին յերկնից և զօրութիւնք երկնից շարժեսցին: Եւ ապա երևեսցի նշան որդւոյ մարդոյ յերկինս, և յայնժամ կոծեսցին ամենայն ազգք երկրի, և տեսցեն զորդի մարդոյ եկեալ ի վերայ ամպոց երկնից զօրութեամբ և փառօք բազմօք: Եւ առաքեսցէ զհրեշտակս իւր փողով մեծաւ, և ժողովեսցեն զընտրեալս նորա ի չորից հողմոց՝ ի ծագաց երկնից մինչև ի ծագս նոցա: Ի թզենւոյ անտի ուսարուք զառակն. զի յորժամ նորա ոստքն կակղասցին և տերևն ցցուիցի, գիտէք թէ մերձ է ամառն: Նոյնպէս և դուք՝ յորժամ տեսանիցէք զայս ամենայն, գիտասջիք թէ մերձ է ի դուրս: Ամէն ասեմ ձեզ՝ եթէ ոչ անցցէ ազգս այս, մինչև այս ամենայն եղիցի: Երկինք և երկիր անցցեն, և բանք իմ մի՛ անցցեն: Բայց վասն աւուրն այնորիկ և ժամու՝ ոչ ոք գիտէ, ոչ հրեշտակք երկնից և ոչ Որդի, բայց միայն Հայր: Այլ որպէս աւուրքն Նոյի, այնպէս եղիցի գալուստն որդւոյ մարդոյ: Զի որպէս էին յաւուրսն որ յառաջ քան զջրհեղեղն, ուտէին և ըմպէին, կանայս առնէին և արանց լինէին մինչև յօրն՝ յորում եմուտ Նոյ ի տապանն, և ոչ գիտացին՝ մինչև եկն ջրհեղեղն և եբարձ զամենեսին, այնպէս եղիցի և գալուստն որդւոյ մարդոյ: Յայնժամ թէ իցեն երկու յագարակի, մին առնուցու և միւսն թողուցու: Եւ եթէ երկու աղայցեն ի մի երկանս, մին առնուցու և միւսն թողուցու: Արթուն կացէք՝ զի ոչ գիտէք յորում ժամու Տէրն ձեր գայ: Զայն գիտասջիք, եթէ գիտէր տանուտէր յորում պահու գող գայ, սկէր՝ և ոչ տայր ական հատանել զտանն իւրոյ: Վասն այսորիկ և դուք եղերուք պատրաստք, զի յորում ժամու ոչ ակն ունիցիք՝ գայ որդի մարդոյ: Իսկ ո՞վ իցէ հաւատարիմ ծառայ և իմաստուն, զոր կացոյց տէր իւր ի վերայ ծառայից իւրոց՝ տալ նո-

Digitized by Google

ցա կերակուր ի ժամու։ Երանի է ծառային այնմիկ՝ զոր եկեալ տէրն գտանիցէ արարեալ այնպէս. ամէն ասեմ ձեզ, զի ի վերայ ամենայն ընչից իւրոց կացուսցէ զնա։ Ապա թէ ասիցէ ծառայն չար ի սրտի իւրում, տէր իմ յամէ զգալ, և սկսանիցի հարկանել զծառայակիցս իւր, ուտիցէ և ըմպիցէ ընդ արբեցողս, գայցէ տէր ծառային այնորիկ՝ յաւուր յորում ոչ ակն ունիցի, և ի ժամու յորում ոչ գիտիցէ, և կտրեսցէ զնա ընդ մէջ, և զբաժին նորա ընդ կեղծաւորս դիցէ. անդ եղիցի լալ և կրճել ատամանց։ Յայնժամ նմանեսցի արքայութիւն երկնից տասն կուսանաց, որոց առեալ զլապտերս իւրեանց՝ ելին ընդ առաջ փեսային և հարսին. հինգն ի նոցանէ յիմարք էին և հինգն իմաստունք։ Յիմարքն առին ըզլապտերսն, և ձէթ ընդ իւրեանս ոչ բարձին։ Իսկ իմաստունքն առին ձէթ ամանօք ընդ լապտերս իւրեանց։ Եւ ի յամել փեսային, նիրհեցին ամենեքեան և ի քուն մտին։ Եւ ի մէջ գիշերի եղև բարբառ. ահա փեսայ գայ արիք ընդ առաջ նորա։ Յայնժամ յարեան ամենայն կուսանքն, և կազմեցին զլապտերս իւրեանց։ Ասեն յիմարքըն ցիմաստունսն. տուք մեզ յիւղոյդ ձերմէ, զի ահա շիջանին լապտերքս մեր։ Պատասխանի ետուն իմաստունքն և ասեն. գուցէ ոչ իցէ մեզ և ձեզ բաւական. այլ երթայք ի վաճառականս և գնեսջիք ձեզ։ Իբրև նոքա գնացին գնել՝ եկն փեսայն, և պատրաստքն մտին ընդ նմա ի հարսանիսն, և փակեցաւ դուռնն։ Յետոյ գան և այլ կուսանքն և ասեն. տէր տէր՝ բաց մեզ։ Նա պատասխանի ետ և ասէ. ամէն ասեմ ձեզ, թէ ոչ գիտեմ զձեզ։ Արթուն կացէք՝ զի ոչ գիտէք զօրն և ոչ զժամն։ Որպէս այր մի գնացեալ ի տար աշխարհ, կոչեաց զծառայս իւր՝ և ետ նոցա զինչս իւր։ Ումեմն ետ հինգ քանքար, և ումեմն երկուս, և ումեմն մի. իւրաքանչիւր ըստ իւրում կարի, և գնաց։ Չոգաւ վաղվաղակի՝ որ առ զհինգն, գործեաց նոքօք և շահեցաւ այլ ևս հինգ։ Նոյնպէս և որ զերկուսն՝ շահեցաւ այլ ևս երկուս։ Եւ որ զմին առ, գնաց փորեաց զերկիր և թաքոյց զարծաթ տեառն իւրոյ։ Յետ բազում ժամանակի գայ տէր ծառայիցն այնոցիկ, և առնէ համարս ի մէջ նոցա։ Եւ մատուցեալ որ զհինգ քանքարն առ, մատոյց այլ ևս հինգ քանքար՝ և ասէ. տէր, հինգ քանքար

Digitized by Google

*ետուր ցիս, արդ ահաւասիկ հինգ այլ ևս քանքար ի վերայ շահեցայ: Ասէ ցնա տէրն իւր. ազնիւ, ծառայ բարի և հաւատարիմ, որովհետև ի սակաւուդ հաւատարիմ ես, ի վերայ բազմաց կացուցից զքեզ. մուտ յուրախութիւն տեառն քո: Մատուցեալ և որոյ զերկուս քանքարսն առեալ էր, և ասէ. տէր, երկուս քանքարս ետուր ցիս, ահաւասիկ երկուս ևս այլ քանքար՝ զոր ի վերայ շահեցայ: Ասէ ցնա տէրն իւր. ազնիւ, ծառայ բարի և հաւատարիմ. որովհետև ի սակաւուդ հաւատարիմ ես, ի վերայ բազմաց կացուցից զքեզ. մուտ յուրախութիւն տեառն քո: Մատուցեալ և որոյ զմի քանքարն առեալ էր, և ասէ. տէր, գիտէի, զի այր մի խիստ ես, հնձես՝ զոր ոչ սերմանեցեր, և ժողովես՝ ուստի ոչ սփռեցեր. երկեայ՝ գնացի և թագուցի զքանքարն քո յերկրի. արդ՝ ահաւասիկ քոյդ ցքեզ: Պատասխանի ետ տէրն և ասէ ցնա. ծառայ չար և վատ, գիտէիր թէ հնձեմ՝ ուստի ոչ սերմանեցի, և ժողովեմ՝ ուստի ոչ սփռեցի. պարտ էր քեզ արկանել զարծաթդ իմ ի սեղանաւորս, և եկեալ ես տոկոսեօք պահանջէի զիմ: Արդ առէք ի դմանէ զքանքարդ, և տուք այնմ որ ունիցի զտասն քանքարսն: Զի ամենայնի որ ունիցի՝ տացի և յաւելցի, և որ ոչն ունիցի, և զոր ունիցին՝ բարձցի ի նմանէ: Եւ զծառայդ անպիտան հանէք ի խաւարն արտաքին. անդ եղիցի լալ և կրճել ատամանց: Եւ յորժամ եկեսցէ որդի մարդոյ փառօք իւրովք՝ և ամենայն հրեշտակք ընդ նմա, յայնժամ նստցի յաթոռ փառաց իւրոց. և ժողովեսցին առաջի նորա ամենայն ազգք, և մեկնեսցէ զնոսա ի միմեանց, որպէս հովիւ զի մեկնեսցէ զոդիս յայծեաց: Եւ կացուսցէ զոդիսն ընդ աջմէ իւրմէ և զայծիսն ի ձախմէ: Յայնժամ ասասցէ Թագաւորն ցայնոսիկ՝ որ ընդ աջմէն իցեն. եկայք օրհնեալք Հօր իմոյ, ժառանգեցէք զպատրաստեալ ձեզ արքայութիւնն ի սկզբանէ աշխարհի: Զի քաղցեայ և ետուք ինձ ուտել, ծարաւեցի՝ և արբուցէք ինձ, օտար էի՝ և ժողովեցէք զիս, մերկ՝ և զգեցուցէք զիս, հիւանդ էի՝ և տեսէք զիս, ի բանտի էի՝ և եկիք առ իս: Յայնժամ պատասխանի տացեն նմա արդարքն և ասասցեն. տէր, ե՞րբ տեսաք զքեզ քաղցեալ՝ և կերակրեցաք, կամ ծարաւի՝ և արբուցաք, ե՞րբ տեսաք ըզ-*

քեզ օտար՝ և ժողովեցաք, կամ մերկ՝ և զգեցուցաք, Երբ տեսաք զքեզ հիւանդ կամ ի բանտի, և եկաք առ քեզ։ Պատասխանի տացէ Թագաւորն՝ և ասասցէ ցնոսա. ամէն ասեմ ձեզ, որովհետև արարէք միում յեղբարցս այսոցիկ փոքրկանց՝ ինձ արարէք։ Յայնժամ ասասցէ և ցայնոսիկ՝ որ ընդ ահեկէն իցեն. երթայք յինէն անիծեալք ի հուրն յաւիտենական, որ պատրաստեալ է սատանայի և հրեշտակաց նորա։ Զի քաղցեայ՝ և ոչ ետուք ինձ ուտել, ծարաւեցի՝ և ոչ արբուցէք զիս, օտար էի՝ և ոչ ժողովեցէք զիս, մերկ էի՝ և ոչ զգեցուցէք զիս, հիւանդ և ի բանտի՝ և ոչ տեսէք զիս։ Յայնժամ պատասխանի տացեն և նոքա՝ և ասասցեն. տէր, Երբ տեսաք զքեզ քաղցեալ կամ ծարաւի կամ օտար կամ մերկ կամ հիւանդ կամ ի բանտի, և ոչ պաշտեցաք զքեզ։ Յայնժամ պատասխանի տացէ նոցա և ասասցէ. ամէն ասեմ ձեզ, որովհետև ոչ արարէք միում ի փոքրկանցս յայսցանէ, և ոչ ինձ արարէք։ Եւ երթիցեն նոքա ի տանջանսն յաւիտենականս, և արդարքն ի կեանսն յաւիտենականս։ Եւ եղև իբրև կատարեաց Յիսուս զամենայն զբանս զայսոսիկ, ասէ ցաշակերտսն իւր. գիտէ՞ք, զի յետ երկուց աւուրց զատիկ լինի, և որդի մարդոյ մատնի ի խաչ ելանել։ ԻԶ. 2։

Քոր. Խնդրեսցուք։ Կեցո։ Է Ոխ։ Աղ. Թագաւոր խաղ։

---

## ԱՒԱԳ
## ՉՈՐԵՔՇԱԲԱԹԻ. ԳԶ

### Ի ԳԻՇԵՐԻ

### ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԳԶ

Ո՛ր յաթոռ փառաց բազմեալ ընդ Հօր անըսկըզբնակի՛ց Բանդ. այսօր բազմիլ ընդ հողեղէնսըն յա՛նձն առեր. ‖ Օրհնեմք զեկեալդ ի փրկութիւն աշխարհի։ Ո՛ր զանձառ աստուածութեամբդ օծեալ զքո ծառայակա՛ն կերպ. այսօր հանեցար օծանիլ իւղով ի մեղաւորաց. օրհ։ Ո՛ր կենարար Թաղման քո զուշակ զիւղոյն ծանուցեր զօծումն. այսօր Յուդային յայտնեցաւ խոր-

հաւրդ արծաթսիրութեան. օրհնեմք զեկեալդ ի փրկութիւն աշխարհի։

✝ Որ խորհրդեան մի ընդ Հօր և Հոգւոյն. արար ի պատկեր իւր զմարդն առաջին. այսօր որդւոք մարդկան ժողովեալ խորհրդին մատնել ի մահ զՈրդին Աստուծոյ։ Յուդա սիրոյն աշակերտ. փոխանակեաց զատելութիւն առ վարդապետին. մատնելով քահանայից ընդ երեսուն արծաթոյ։

Վերամձգողն երկնից մշտընջենաւոր Հօր Որդին. ներգործեալ խմորս ի վեր քան զհրաշս. ծառայի առեալ զկերպ անկողոպտելի աստուածութեամբն։ Բանին զմաքրեցելոցն ջրով զոտըս լուանայ. զի զխոնարհութիւն ի նոսա տպաւորեսցէ. Երրորդութեանն գոլ օթեվան։ Բաշխէ զմարմին իւր եւ զարիւն. ընդ որ ուխտ անուանեալ եւ յիշատակ կամաւոր մահուանն. մերձեցելոցս ի նա սրբութեամբ։

Արկողդ ըզլոյս որպէս զօթոց. այսօր անձամբ խոնարհութեամբ ի վերնատունն խորհրդոյ ըզգեստ ծառայի ըսփածանել յանձն առեր. օրհնեմք զեկեալդ ի կամաւոր չարչարանս։ Որում երկրպագեն դասք հրեշտակաց խոնարհեցար ի լուանալ զոտըս հողեղինաց. բժշկել սոքօք ըզգարշապարս նախահօրն. բժշկեա զհոգւոյ իմոյ զհիւանդութիւն։ Որ ի խորհուրդս փրկականս եկեղեցւոյ. բաշխեցեր աշակերտացն զմարմինըդ քո. նորոգելով ըզմահացեալսն ի ճաշակմանէ. հաղորդս այսմ ընկալ ըզմեզ միայն մարդասէր։

Որ անըսկիզբն յէութեանդ ես Աստուած. այսօր ըզգեցար ըզգեստ հողեղէն ծառայի ծածկելով ըզմերկութիւն նախահօրն. օրհնեալ եկեալդ ի փրկու-

թեան ազգի մարդկան։ Որ վերօրհնեալ ի հրեղէն քերովբէից. այսօր եկիր կամաւ ի վերնատունն խորհրդոյ. լուացեր զաշակերտսն յօրինակ վասն մեր. || Օրհնեալ եկեալդ ի փրկութիւն ազգի մարդկան։ Որ յաթոռ փառաց նստեալ ընդ Հօր. այսօր բազմիլ ընդ աշակերտսն յանձն առեր. բաշխելով ըզմարմին և զարիւն քո սուրբ. Օրհնեալ։

Եկեալ ի փրկութիւն ազգի մարդկան. ի ծառայէ յանձն առնու մատնիլ ի դատաստան. || Համբերելով վասն ըզմեզ կեցուցանել։ Մատնեալ Պիղատոսի որպէս մահապարտ. ի յԱննայէ և ի Կայիափայ դատապարտեալ. համբերելով։ Կացեալ ի յատենի երկրորդ Ադամ. վասն առաջինն Ադամայ պարտեացըն թողութեան. համբերելով։

Հդ. Արեգակն արդարութեան Քրիստոս ծագեալ յաշխարհ հալածեաց ըզխաւարն անգիտութեան. եւ յետ մահու եւ յարութեան համբարձաւ առ Հայր յորմէ ծագեաց. որ երկրպագի յերկնաւորաց եւ յերկրաւորաց ընդ Հօր եւ սուրբ Հոգւոյն. || Վասն որոյ և մեք երկրպագանեմք Հօր Հոգւով եւ ճշմարտութեամբ։ Որ փոխանակ ծոցածին Բանին որ եւ յերկինս. առաքեցաւ աւետիքըն Հօր ի բարձանց Հոգին ճշմարտութեան. մխիթարել զորս յԱդամայ տըրտմեցելոց եւ հրաժարել զընտրեալ դասս առաքելոցն. վասն։ Այսօր տըրտմական և գիշերային լուծան երկունք ծննդեան նախամօրն. քանզի զծնեալըն մարմնով ի մահ եւ յապականութիւն. վերըստին ծնանի Հոգին յորդիս լուսոյ Հօրն երկնաւորի. վասն։

Հն. Ի ձայն մեծի զուարթնոյն և ի հընչումըն հրաշալի փողոյն. ուր հողացեալ մարմինք մարդկան

նորոգին. Յայնժամ յաւուր ահեղին յիշեա Տէր և ըզմեր ըզննջեցեալսն եւ հանգո ընդ սուրբս քո: Յորժամ նշան տէրունեան ճառագայթիւք փայլէ. և թագաւորըդ թագաւորաց փառօք տեսանի. յայնժամ: Յորժամ ատեան դատաստանին դնի. և գըրքու-թիւնըք հրաշիցըն բանին. յայնժամ:

ՄՄ. Այսօր Գաբրիէլ ցընծութեամբ երգեաց սըրբոյ կուսին աւետիս բերկրեաց ասելով. որ ծընաւ ըզփըրկիչ ամենայնց մերոց: Անբաւելին երկնի եւ երկրի. ի կուսական արգանդէ մեզ կեանք յայտնեցաւ. Աստըւած այցելու մարդկան: Ցնծացընթաց փայլումն լուսատեսիլ աստեղն. մոգուցըն հետեւելով նշանին. ի ծընունդ Աստուածորդւոյն:

ԻՉ. Այսօր ցընծան դասք հրեշտակաց ընդ հաստատել քո ի յերկրի. որով լուսեղէն խորան երկնանըման եկեղեցի սուրբ. ուրախ լեր վէմ պատուական հովանի մեր և յոյս: Զուարճացիր հարսն անարատ ըպքօղարկեալ վայելչապէս. զարդարեալ հանդերձ փառօք եւ ել ընդ առաջ երկնաւոր փեսայեն. ուրախ լեր ամուլ բազմածին ահա փեսայն գայ առ քեզ: — Փառք Հօր: Աստուածնոր նորոգեցաւ մեզ աւազան մըկըրտութեան. յորդանան մօր հոգւովն յըղացեալ ծնանելով վերըստին զհաւատացեալքս ի Քրիստոս. ուրախ լեր անմայր յառաջնումն ահա Որդին գայ առ քեզ:

— Այժմ և միշտ: Որ զամենայն տնօրինաբար. կամաւ յանձն առեր փրկիչ ընդ մեղաւորացս. վասն անճառ խոնարհութեանդ քո և մեզ ողորմեա:

Մաղթանք. Փառք հրաշափառ տէրութեան:

Ալէլուիա. Աւագ չորեքշաբաթին. Որ ուտէր զհաց իմ:

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

### ՀԱՐՑ ԳՁ

Որ խորհրդոց ես Տէր Աստուած անման. զծածկեալ խորհուրդ չարին անգամ կանխեալ փոխնեալ ‖ ընդ քեզ օրհնեմք Աստուած հարցն մերոց: Որ ընդնախնոյն Աբրահամու զհանդէս. խորագոյնըս ծանուցեր անեւտեօք Որդւոյն պատուեալ ընդ քեզ: Որ շնորհես ծածկելոց յայտնել զդէլ. Յուդաս արծաթոյ զանհասանելիդ մատնէր. ընդ քեզ:

Գ. ԸզՏէր օրհնեցէք ‖ եւ բարձր արարէք ընդ յաւիտեան: Զքնականն ի վերին զօրացն ծածկապէս խորհուրդ. քահանայքն հոլոնեալ վաճառէին զԱստուած. եւ բարձր: Որ վասն մեր համբերեաց բանտարկութին. կամաւ վաճառի Աստուած Բանն եւ բարձր:

### ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԳՁ

Աստուածածին երկնային դուռն աստուածային ձայնիւն աւետարանէր հրեշտակն. ‖ ուրախ լեր բերկրեալդ Տէր ընդ քեզ: Ի՛ քերովբէս բազմեալ ընդ Հօր անապականաբար բնակիլ հաճեցաւ ի քում յորովայնի. ուրախ: Որ բոցեղէն սրովբէիւք շրջափակեալ պահիւր. այսօր ի մէջ մարդկան ի գիրկս հողեղինի յայտնեալ. ուր:

### ՈՂՈՐՄԵԱ ԳՁ

Ընդ քէն խորհեցան ի չարութիւն Աստուած յաւիտենից. որ բանիւ զարարածս խորհրդով հիմնեցուցեր: Ընդ քեզ որ արարիչդ ես մեծութեան արծաթոյ վաճառէին. յանձն առեր զամենայն համբերելով վասն մեր: Ընդ քեզ որ թագաւորդ թագաւորաց ի ծառայէ դատապարտեալ. զի ըզմեզ փրկեսցես ի յանիծից Ադամայ:

Digitized by Google

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԳԶ

Այսօր եկեալ կամաւ փրկիչն առ ի մատնիլ յանօրէն ժողովրդեն. ‖ վասն փրկութեան հեթանոսաց: Այսօր մատնի Բանն ի բանաւոր հօտէ. և յառաջնոց դատապարտի յանօրինաց ժողովրդեն. վասն: Այսօր հողն ըզՏէրըն դատապարտէ. եւ արծաթոյ վաճառի արարիչն արարածոց. վասն:

Առաւօտու Երգ

Խորհեցան և խօսեցան զչարութիւն, և զապիրատութիւն ի բարձունս խորհեցան:
Եդին յերկինս զբերանս իւրեանց, և զլեզուս իւրեանց ածէին զերկրաւ:

Քարոզ. Փառաւորեսցուք:

ՄԱՆԿՈՒՆՔ ԳԶ

Ո՞ւր ըսքանչելիք այսօր տեսանեմք յաշխարհի ի մէջ հողեղինաց. արարածք արարչին սպանութեան խորհին զխորհուրդ: Որ բանիւն իւրով զերկինս եւ զերկիրըս հաստատեաց յոչընչէ գոյացուցեալ. վաճառի այսօր դիւրագին ընդ երեսուն արծաթոյ: Ով Յուդաս արտամուելի. երկնաւոր վարդապետին սպանութեան խորհի զխորհուրդ. մատնելով անօրինաց զի խաչեսցի ի մէջ երկրի:

Քար. Վասն խաղաղութեան: Աղ. Սուրբ ես Տէր:

Աղօ. ՍԱՂՄՈՍ Խ. ողբաձայն.

Կց. Որ ուտէր զհաց իմ, յաճախեաց առնել ինձ խաբէութիւն:

Փխ. Երանի որ խորհի զաղքատն և զտնանկն, յաւուր չարի փրկէ զնա Տէր:
Տէր փրկէ զնա և կեցուցանէ, երանելի առնէ զնա ի վերայ երկրի. և ոչ մատնէ զնա ի ձեռս թշնամեաց իւրոց:

Digitized by Google

Տէր օգնական է նմա ի մահիճս ցաւոց իւրոց, զամենայն անկողինս նորա դարձուցանէ ի հիւանդութենէ նորա։

Ես ասացի Տէր ողորմեա ինձ, բժշկեա զանձն իմ, ես մեղայ քեզ։

Թշնամիք իմ ասացին ինձ չար, երբ իցէ զի մեռցի և կորիցէ անուն նորա։

Մտանէր տեսանել զնանրութիւն, խօսէր ի սրտի իւրում. ժողովէր զանօրէնութիւնս յանձն իւր։

Արտաքս ելանէր և զնոյն խօսէր, զինէն շշնջէին ամենայն թշնամիք իմ։

Խորհեցան չար ի վերայ իմ, բան անօրէնութեան եդին ի վերայ իմ։

Միթէ որ ննջիցէն՝ այլ ո՞չ ևս յաւելուցու յառնել. քանզի և այրն խաղաղութեան իմոյ՝ յոր և ես յուսացայ։

Որ ուտէր զհաց իմ, յաճախեաց առնել ինձ խաբէութիւն։

Այլ դու Տէր ողորմեա ինձ, կանգնեա զիս, և հատուցից նոցա։

Յայսմ ծանեայց թէ հաճեցար ընդ իս, զի մի՛ ուրախ եղիցին յիս թշնամիք իմ։

Այլ զիս յամբծութեան իմում ընկալար, հաստատեցեր զիս առաջի քո յաւիտեան։

Օրհնեալ Տէր Աստուած Իսրայելի յաւիտեանս յաւիտենից. եղիցի եղիցի։

## Զկնի Օրթի

### Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մարկոսի ։ ԺԴ. 1 ։

### ԶՏէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ էր զատիկն և բաղարջակերք յետ երկուց աւուրց. խնդրէին քահանայապետքն և դպիրք՝ եթէ զիարդ զնա նենգաւ կալեալ սպանանիցեն։ Բայց ասէին՝ թէ մի՛ ի տօնի աստ. զի մի՛ խռովութիւն լինիցի ի ժողովրդեանն։ Եւ մինչ էր ի Բեթանիա ի տան Սիմովնի բորոտի բազմեալ, եկն կին մի որ ունէր շիշ իւղոյ նարդեան ազնուի մեծագնոյ, և բեկեալ զշիշն՝ եհեղ ի վերայ գլխոյ նորա։ Եւ աշակերտքն զչարէին և ասէին. ընդէ՞ր եղև

*կորուստ ուղղոյդ այդորիկ. մարթ էր զայդ իւղ վաճառել աւելի քան երեք հարիւր դահեկանի, և տալ աղքատաց. և զայրանային նմա յոյժ։ Եւ Յիսուս ասէ ցնոսա. Թոյլ տուք դմա. զի՞ աշխատ առնէք, զի գործ մի բարի գործեաց դա յիս. յամենայն ժամ զաղքատս ընդ ձեզ ունիք, և յորժամ կամիք՝ կարող էք առնել նոցա բարիս. այլ զիս ոչ յամենայն ժամ ընդ ձեզ ունիք։ Դա զոր ունէրդ՝ արար. յառաջագոյն խնկեաց զմարմին իմ ի նշան պատանաց։ Ամէն ասեմ ձեզ, ուր և քարոզեսցի աւետարանս այս ընդ ամենայն աշխարհ, և զոր արար դա՝ խօսեսցի վասն յիշատակի դորին։ Եւ Յուդա Սկարիովտացի մի յերկոտասանից անտի՝ գնաց առ քահանայապետսն՝ զի մատնեսցէ զնա նոցա։ Նոքա իբրև լուան՝ խնդացին, և խոստացան տալ նմա արծաթ։ Եւ խնդրէր՝ թէ զիա՞րդ պարապով մատնեսցէ զնա։ Ll։*

Երգ. Խաւարն անդ։ Քար. Խնդրեսցուք։ Կեցո։ Է Ըն.։ Աղ. Քում ամենազօր և հրաշալի տէրութեանդ։

---

ԶՃԱՇՈՒ ժամն ուէն հանդերձ շարականօք և մեծ աղօթիւք։

---

Ց Ե Ր Ե Կ Ո Ց Ի Ն

Ի փոխն ժամն ուէն. Խոնարհեցո և Ապրեցո։

*Մ Ե Ս Ե Դ Ի*

*Նայեաց, և լուր ինձ Տէր Աստուած իմ։*

*Մինչև յե՞րբ Տէր մոռանաս զիս իսպառ, մինչև յե՞րբ դարձուցանես զերեսս քո յինէն։*

*ԸՆԹԵՐՑՈՒԱԾ Ի ԾՆՆԴՈՑ։ ԺԸ. 1։*

*Եւ երևեցաւ Աստուած (Աբրահամու) առ կաղնեաւն Մամբրէի, մինչդեռ նստէր առ դուրս խորանին իւրոյ ի միջօրէի։ Ամբարձեալ զաչս իւր և ետես, և ահա արք երեք կային ի վերոյ քան զնա։ Եւ իբրև ետես, ընթացաւ ընդ առաջ նոցա ի դրանէ խորանին իւրոյ, և երկիր եպագ ի վերայ երկրի և ասէ. Տէր եթէ գտի շնորհս առաջի քո, մի՛ զանց առներ ի ծառայէ քումմէ. այլ առից սակաւ մի ջուր, և լուասցեն զոտս ձեր, և զովասջիք ընդ ծառովս. և առից հաց և կերիջիք և ապա*

երթիջիք զճանապարհ ձեր. փոխանակ զի դարձարուք առ ծառայ ձեր։ Եւ ասեն. այդպէս արա, որպէս ասացերդ։ Եւ պնդեցաւ Աբրահամ ի խորանն առ Սառրա, և ասէ ցնա. փութա թրեա գրիւս երիս ալեր նաշհոյ, և արա նկանս։ Եւ յանդեայ ընթացաւ Աբրահամ, և ա՛ռ որթ մի մատաղ և բարի և ետ ցպատանին, և փութացոյց վաղվաղակի հասուցանել։ Եւ ա՛ռ կոգի և կաթն և զորթն զոր հասոյց, և եդ առաջի նոցա և կերան. և նա կայր առաջի նոցա ընդ ծառովն։ Եւ ասեն ցնա. ո՞ւր է Սառրա կին քո։ Նա պատասխանի ետ և ասէ. ահաւասիկ ի խորանի անդ է։ Եւ ասէ. դարձեալ եկից առ քեզ ի ժամանակի յայսմիկ ի սոյն աւուրս, և ունիցի որդի Սառրա կին քո։ Եւ Սառրա ունկն դնէր առ դրան խորանին, քանզի յետոյ նորա կայր։ Եւ Աբրահամ և Սառրա ծերացեալք էին և անցեալք զաւուրբք, և պակասեալ էր ի Սառրայէ լինել ի կանանց օրէնն։ Ծիծաղեցաւ Սառրա ընդ միտս և ասէ. որ ինչ ցայժմ ոչ եղև ինձ, արդ լինիցի. և տէր իմ ծերացեալ է։ Եւ ասէ Տէր ցԱբրահամ. զի՞ է զի ծիծաղեցաւ Սառրա ընդ միտս իւր և ասէ, թէ արդարև ծնանիցի՞մ, զի ահա ես պառաւեալ եմ։ Միթէ տկարանայցէ՞ առ ի յԱստուծոյ բան. ի ժամանակի յայսմիկ դարձայց առ քեզ ի սոյն աւուրս, և եղիցի Սառրայի որդի։ Ժխտեաց Սառրա և ասէ. թէ ոչ ծիծաղեցայ. քանզի երկեաւ։ Եւ ասէ. ոչ այդպէս, այլ ծիծաղեցար։ Եւ յարուցեալ անտի արանցն հայեցան ընդ երեսս սոդոմացւոց և գոմորացւոց. և Աբրահամ երթայր ընդ նոսա յուղարկել զնոսա։ Եւ ասէ Տէր. միթէ թագուցից ինչ իցէ յԱբրահամէ ծառայէ իմմէ զոր ինչ գործելոց եմ. այլ Աբրահամ լինելով լինիցի յազգ մեծ և ի բազում, և օրհնեսցին ի նա ամենայն ազգք երկրի։ Քանզի գիտէի եթէ պատուիրեսցէ որդւոց իւրոց և տան իւրոյ յետ իւր՝ պահել զճանապարհս Տեառն և առնել զարդարութիւն և զիրաւունս. և ածցէ Տէր Աստուած ի վերայ Աբրահամու զամենայն զոր խօսեցաւ ընդ նմա։ Եւ ասէ Տէր. աղաղակ սոդոմացւոց և գոմորացւոց յաճախեաց, և մեղք նոցա մեծացան յոյժ. և արդ իջեալ տեսից եթէ ըստ աղաղակին նոցա որ յիս հասանէ՝ վճարիցեն. ապա թէ ոչ՝ զի գիտացից։ Եւ դարձեալ անտի արանցն եկին ի Սոդոմ.

Digitized by Google

և Աբրահամ կայր առաջի Տեառն ։ Եւ մատուցեալ Աբրահամ ասէր . միթէ կորուսանիցե՞ս զարդարն ընդ ամպարշտին, և լինիցի արդարն իբրև զամպարիշտն ։ Եթէ իցեն յիսուն արդար ի քաղաքի, կորուսանիցե՞ս զնոսա, և ո՞չ ներիցես ամենայն տեղեացն վասն յիսուն արդարոյն՝ եթէ իցեն ի նմա . քաւ լիցի քեզ առնել զայն բան, սպանանել զարդարն ընդ ամպարշտի, և լինիցի արդարըն իբրև զամպարիշտն . քաւ լիցի քեզ որ դատիս զամենայն երկիր . մի՛ արասցես զայն դատաստան ։ Եւ ասէ Տէր . եթէ գտցի ի Սոդոմ յիսուն արդար ի քաղաքի անդ, թողացուցից ամենայն տեղեացն վասն նոցա ։ Պատասխանի ետ Աբրահամ և ասէ . այժմ սկսայ խօսել ընդ Տեառն, բայց ես հող եմ և մոխիր . եթէ պակասիցեն քան զյիսուն արդար հնգիւ չափ, կորուսանիցե՞ս վասն հնգիցն զամենայն քաղաքն ։ Եւ ասէ . ոչ կորուսից՝ եթէ գտցի անդ քառասուն և հինգ ։ Եւ յաւել ես խօսել ընդ նմա և ասէ . իսկ եթէ գտցի անդ քառասուն ։ Եւ ասէ . ոչ կորուսից վասն քառասնիցն ։ Եւ ասէ . միթէ իցէ՞ ինչ Տէր եթէ խօսիցիմ . իսկ եթէ գտցի անդ երեսուն ։ Եւ ասէ . ոչ կորուսից՝ եթէ գտցի անդ երեսուն ։ Եւ ասէ . որովհետև կալայ խօսել ընդ Տեառն . եթէ գտցի անդ քսան ։ Եւ ասէ . ոչ կորուսից վասն քսանիցն ։ Եւ ասէ . միթէ իցէ՞ ինչ Տէր եթէ խօսեցայց ևս միւս անգամ . եթէ գտանիցի անդ տասն ։ Եւ ասէ . ոչ կորուսից վասն տասանցն ։ Եւ գնաց Տէր իբրև լռեաց ի խօսելոյ անտի ընդ Աբրահամու, և Աբրահամ դարձաւ ի տեղի իւր ։ Եւ եկին երկու հրեշտակքն ի Սոդոմ ընդ երեկս . և Ղովտ նստէր առ դրան սոդոմացւոցըն ։ Իբրև ետես Ղովտ, յարեաւ ընդ առաջ նոցա, և երկիր եպագ ի վերայ երեսաց իւրոց յերկիր և ասէ . ահաւասիկ ես տեարք, եկայք ի տուն ծառայի ձերոյ, հանգերուք, և լուացից զոտս ձեր . և կանխեալ ընդ առաւօտս երթիջիք զճանապարհ ձեր ։ Եւ ասեն . ոչ . այլ ի քաղաքամիջի աստ ագցուք ։ Եւ բռնադատեաց զնոսա յոյժ, և խոտորեցան առ նա և մտին ի տուն նորա, և արար նոցա ընթրիս, և բաղարջ եփեաց նոցա և կերան ։ Մինչչև ի քուն մտեալ էր նոցա, և արք քաղաքին սոդոմացւոց պատեցին զտունն յերիտասարդաց մինչև ցծերս, ամենայն ժողովուրդն ի միասին, և կո-

Digitized by Google

*չէին արտաքս զՂովտ և ասէին ցնա . ո՞ւր են արքն որ մտին առ քեզ գիշերի , ած զնոսա առ մեզ զի գիտասցուք զնոսա ։ Ել և առ նոսա Ղովտ արտաքոյ դրանն , և զդուռն ձգեաց զկնի իւր , և ասէ ցնոսա . քաւ լիցի ձեզ եղբարք . մի՛ գործէք զայդ չարիս . են իմ երկու դստերք , որ զայր ոչ գիտեն , հանից զնոսա առ ձեզ , և արարէք ընդ նոսա որպէս հաճոյ իցէ ձեզ . բայց միայն արանցդ այդոցիկ մի՛ ինչ մեղ առնիցէք , որովհետև մտին ընդ յարկաւ գերանաց իմոց ։ Եւ ասեն . ի բաց կաց . մտեր բնակել պանդխտութեամբ , միթէ և դատաստա՞ն ևս դատել . այժմ և զքեզ ևս չարչարեսցուք առաւել քան զնոսա ։ Եւ բռնադատէին զայրն զՂովտ յոյժ , և մերձ էին զդուռն խորտակել ։ Եւ ձգեալ արանցն զձեռս իւրեանց կորզեցին յինքեանս զՂովտ ի տուն անդր , և զդուրս տանն փակեցին . և զարսն որ առ դուրս տանն կային՝ հարին կուրութեամբ ի փոքուէ մինչև ցմեծն , և լքան խնդրել զդուրսն ։ Եւ ասեն արքըն ցՂովտ . է՞ ոք քո աստ փեսայ կամ որդիք կամ դըստերք , կամ այլ ոք քո՛ իցէ ի քաղաքի աստ . հան ըզնոսա ի տեղւոյս յայսմանէ ։ Զի կործանելոց եմք մեք զքաղաքս զայս . զի բարձրացաւ աղաղակ սոցա առաջի Տեառն . և առաքեաց զմեզ Տէր սատակել զսա ։ Ել Ղովտ և խօսեցաւ ընդ փեսայս իւր որ առնլոց էին ըզդստերս նորա , և ասէ . արիք և ելէք ի տեղւոյս աստի յայսմանէ , զի սատակէ Տէր զքաղաքս ։ Եւ թուէր ծաղըր առնել յաչս փեսայից իւրոց ։ Եւ իբրև եղև առաւօտ , փութացուցանէին հրեշտակքն զՂովտ և ասէին . արի ա՛ռ զկին քո և զերկուս դստերս քո զոր ունիս , և ել աստի , զի մի՛ և դու կորնչիցիս ընդ անօրէնութիւնս քաղաքիդ ։ Եւ նոքա խռովեցան . և կալան հրեշտակքն զձեռանէ նորա և զձեռանէ կնոջ նորա և զձեռանէ երկուց դստերաց նորա . զի խնայեաց Տէր ի նա . և հանին զնա և եդին արտաքոյ քաղաքին ։ Եւ եղև իբրև հանին զնոսա արտաքս , ասեն . ապրեցո զանձն քո , մի՛ դառնայցես յետս , և մի՛ կայցես յամենայն կողմանս աշխարհիդ . զերծիր ի լեառն , գուցէ ընդ նոսա ըմբռնիցիս ։ Եւ ասէ Ղովտ ցնոսա . աղաչեմ տէր . որովհետև եգիտ ծառայ քո ողորմութիւն առաջի քո , և մեծ արարեր զարդարութիւն քո՝ զոր առնես յիս ապրել անձին*

իմոյ. և արդ ես ոչ կարեմ զերծանել ի լեառն, գուցէ հասանիցեն ինձ չարիքն և մեռանիցիմ. ահա քաղաքս այս մերձ է անկանել ի նա, որ է փոքրիկ, անդ ապրեցայց. և չէ՞ փոքր, և կեցցէ անձն իմ վասն քո: Եւ ասէ ցնա. ահաւասիկ սարարի մեծարանս երեսաց քոց և ի բանիդ յայդմիկ՝ չկործանել զքաղաքն վասն որոյ խօսեցար: Եւ արդ փութա զերծանել ի նա, զի ոչ կարեմ առնել իրս ինչ մինչև անկանիցիս անդր: Վասն այնորիկ կոչեաց զանուն քաղաքին այնորիկ Սեգովր: Արեգակն ծագեաց յերկիր, և Ղովտ եմուտ ի Սեգովր. և Տէր տեղաց ի Սոդոմ և ի Գոմոր ծծումբ և հուր ի Տեառնէ յերկնից. և կործանեաց զքաղաքսն զայնոսիկ և զամենայն կողմանսն, և զամենայն բնակիչս քաղաքացըն և զամենայն բոյս երկրին: Եւ դարձաւ կինն Ղովտայ յետս, և եղև արձան աղի: Եւ կանխեաց Աբրահամ ընդ առաւօտն ի տեղին ուր կայր առաջի Տեառն, և հայեցաւ յերեսս Սոդոմացւոց և Գոմորացւոց, և յամենայն երեսս երկրի գաւառին. և ետես և ահա ելանէր բոց երկրին իբրև մրրիկ հնոցի: Եւ եղև ի սատակել Տեառն զամենայն զքաղաքսն շուրջ զբնակութեամբն՝ յիշեաց Աստուած զԱբրահամ, և եհան արձակեաց զՂովտ ի միջոյ կործանմանն, ի կործանել Տեառն զքաղաքսն յորս բնակեալ էր ի նոսա Ղովտ: Եւ ել Ղովտ ի Սեգովրայ, և նստէր ի լերինն, և երկոքին դստերք նորա ընդ նմա. քանզի երկեաւ բնակել ի Սեգովր. և բնակեաց յայրի անդ ինքն և երկոքին դստերք նորա ընդ նմա: ժթ. 30:

Ընթերցուած յԱռակաց: Ա. 10:

Որդեակ, մի՛ խաբեսցեն զքեզ արք ամպարիշտք, և մի՛ ախորժեսցես՝ եթէ կոչեսցեն զքեզ և ասիցեն. եկ ընդ մեզ՝ կցորդ լեր արեան. ծածկեսցուք յերկրի զայր արդար ի տարապարտուց. կլցուք զնա կենդանւոյն իբրև դժոխք, և բարձցուք զյիշատակս նորա յերկրէ. և զստացուածս նորա զպէսպէսս ըմբռնեսցուք, լցցուք ըզտունս մեր աւարաւ. զվիճակ քո արկ ընդ մեզ, քսակ հասարակաց ստասցուք ամենեքեան, զանձարան ի միաոյն եղիցի մեր: Որդեակ մի՛ երթար ճանապարհ ընդ նոսա, խոտորեա զոտն քո ի շաւղաց նոցա: Զի ոտք

նոցա ի չարիս ընթանան, և երագունք են ի հեղուլ զա-րիւն։ Զի ոչ եթէ տարապարտուց ձգեն գործիս թռչնոց. զի նոքին իսկ որ սպանութեանն հաղորդ են՝ զանձեն անձանց իւրեանց զչարիս. կործանումն արանց անօրինաց չար է։ Այս ճանապարհք են ամենեցուն որք գործեն զանօրէնս, զի ամպարշտութեամբն զանձինս իւրեանց սատակեն։ 19։

Ընթերցուած ի Զաքարիայ մարգարէէ։ ԺԱ. 11։

Եւ ծանիցեն քանանացիքն զխաշինս պահեստի իմոյ, զի բան Տեառն է։ Եւ ասացի ցնոսա. թէ բարւոք թըւի յաչս ձեր՝ տուք զվարձս իմ. ապա թէ ոչ՝ զրոյց արարէք։ Եւ կշռեցին զվարձս իմ երեսուն արծաթի։ Եւ ասէ ցիս Տէր. արկ դու զայդ ի բովս, և քններ թէ փո՞րձ իցէ, որպէս ես գտայ փորձ վասն նոցա։ Եւ առի զերեսուն արծաթին, և արկի ի տուն Տեառն ի բովս։ Եւ ընկեցի զգաւազանն երկրորդ՝ զվիճակն, ցրել զուխտ իմ ի մէջ Յուդայ և ի մէջ Իսրայելի։ 14։

Աղօ Ուղիղ եղիցին։ Քարոզ. Աղաչեսցուք։

ՀԱՄԲԱՐՁԻ ԳՁ

Նոր սքանչելիք այսօր տեսանեմք յաշխարհի։ 380։

Քարոզ. Վասն խաղաղութեան։ Աղ. Հայր գթած։

Աղօ ՍԱՂՄՈՍ Խ. ողջոյն.

ԿՑ. Ես ասացի Տէր ողորմեա ինձ. բժշկեա զանձն իմ. ես մեղայ քեզ։

Փխ. Երանի որ խորհի զաղքատն և զտնանկն։ 380։

ՉՆԷ Օրթի

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի։ ԻԶ. 3։

Վասն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի

Յայնժամ ժողովեցան քահանայապետքն և դպիրք և ծերք ժողովրդեանն ի սրահ քահանայապետին՝ որում անուն էր Կայիափա. և արարին խորհուրդ՝ զի նենգութեամբ կալցին զՅիսուս և սպանցեն։ Բայց ասէին, թէ մի ի տօնի աստ՝ զի մի խռովութիւն լինիցի ի ժողովըրդեանն։ Իբրև եկն Յիսուս ի Բեթանիա ի տուն Սիմոնի

Digitized by Google

բորոտի, մատեաւ առ նա կին մի, որ ունէր շիշ իւղոյ ծանրագնի, և թափեաց ի գլուխ նորա ի բազմականին։ Իբրև տեսին աշակերտքն՝ բարկացան և ասեն. ընդէ՞ր է կորուստ այդ իւղոյդ. զի մարթ էր վաճառել զդա մեծագնի՝ և տալ աղքատաց։ Գիտաց Յիսուս և ասէ ցնոսա. զի՞ աշխատ առնէք զկինդ, գործ մի բարի գործեաց դա յիս. յամենայն ժամ զաղքատս ընդ ձեզ ունիք, բայց զիս ոչ հանապազ ընդ ձեզ ունիք։ Արկանել դորա զիւղդ ի մարմին իմ՝ առ ի թաղելոյ զիս նշանակեաց։ Բայց ամէն ասեմ ձեզ, զի ուր և քարոզեսցի աւետարանս այս ընդ ամենայն աշխարհ՝ խօսեսցի և զոր արար դա ի յիշատակ դորա։ Յայնժամ գնաց մի յերկոտասանիցն անուանեալն Յուդա Սկարիովտացի առ քահանայապետսն, և ասէ. զի՞նչ կամիք տալ ինձ, և ես մատնեցից զնա ձեզ։ Եւ նոքա կշռեցին նմա երեսուն արծաթի. և յայնմ հետէ խնդրէր պարապ՝ զի մատնեսցէ զնա նոցա։ 16։

Ող․ Քոյ․ Խնդր։ Կեցո․ է Ռի․։ Ող․ Թագաւոր խաղ։

---

ԱՒԱԳ

ՀԻՆԳՇԱԲԱԹԻ ԳԿ

Ի ԳԻՇԵՐԻ

ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԳՁ

ՎԵՐԱՑԳՈՂՆ երկնից մշտընջենաւոր Հօր Որդին. ներգործեալ իմովս ի վեր քան զհրաշս. ծածուայն առեալ ըզկերպ անկողոպտելի աստուածութեամբն։ Բանին զմաքրեցելոցըն ջրով զոտըս լուանայ. զի զխոնարհութիւն ի նոսա տըպաւորեսցէ. Երրորդութեանըն գո լ ծթեվան։ Բաշխէ զմարմին իւր եւ զարիւն. ը նո ր ուխտ անուանեալ եւ յիշատակ կամաւոր մահուանն. մերձեցելոցս ի նա սրբութեամբ։

† Աղբիւր լուսոյ և ճառագայթ անշիջանելի լոյս. որ լուանա լ յանձն առեր զոտս աշակերտացն.

‖ մաքրեա ի մէնջ ըզմէգ խաւարին խորհրդոց եւ լուսաւորեա զմեզ։ Որ մարմնով և արեամբ քո ցուցեր ըզթողութիւն մեղաց. որ ըզմիշտ պատարագիս ի մեզ անծախապէս. մաքրեա։ Որ քաւիչ գայս նոր ուխտ ցուցեր յետ առաջնոյն քո. մահացելոցս ի ճաշակմանէ նախահօրն. մաքրեա։

† Որ նստիս ի յերկինս եւ ի վերայ երկրի այսօր. յանձն առեր լըւանալ զոտս աշակերտացն. եւ զիս լըւա Քրիստոս ի մեղաց իմոց։ Որ բարերանիս յիմանալի զըւարթնոց. հաճեցար մարմնով պատարագիլ. արա եւ զիս արժանի աստուածային շնորհին։ Որոյ աթոռ քերովբէ ի վերնատանն բազմեցար. կենարար բաժակաւն ըզմեզ փրկեցեր. փրկեա եւ զիս յաւիտենից ի հրոյն։

† Քրիստոս Աստուած որ վասըն մեր խոնարհեցար ի կամաւոր չարչարանս. լըւացեր զոտս աշակերտացն ‖ այսօր ի սուրբ վերնատունն. աղաչեմք փրկիչ ողորմեա։ Որ կազմեցեր սեղան խորհրդոց և արբուցեր յանմահական բաժակէն. սըրբոց քոց առաքելոցն այսօր ի սուրբ վերնատունն. աղաչեմք։ Մաքրեա ըզմիտս եւ զխորհուրդըս զի եւ մեք հաղորդեսցուք սըրբութեամբ ընդ սըրբոց քոց առաքելոցն այսօր։

† Որ վասըն մեր յերկրի երեւեալ. զամենայնըն կատարեցեր ըստ օրինացն. այսօր կատարումըն ստուերական տօնիցն. ‖ Որդի Աստուծոյ ողորմեա։ Մարդ ճըշմարիտ և գառն անարատ. որ դատապարտեցեր ըզմեղս ի մարմնի. այսօր խոնարհեցար ի լըւանալ զոտս աշակերտացն. Որդի։ Բան Հօր և քահանայապետ ճըշմարիտ. որ զաշխարհակեցոյց ըզմարմին և զարիւնդ քո բաշխեցեր յառա-

քեալսն. այսօր հաղորդին հոգեղէնք մատուա-
ծայինն խորհրդոյդ. Որդի Աստուծոյ ողորմեա։
† Յորմէ սարսեալ սերովբէքն ոչ իշխէին նայել.
այսօր ի ծառայի կերպարանս եղեալ նախա-
յաւիտեան Բանն. ‖ օրհնեցէք ըզըն հոգեւոր եր-
գով։ Որ զըստուերականըն այսօր ճըշմարտապէս կա-
տարեաց. լըւանալով զոտս աշակերտացն ի պա-
տրանաց թըշնամւոյն. օրհնեցէք։

Հգ. Որ համագոյդ ես Հօր և Որդւոյ. անճառաբար
բըղխումն ի միշտ էէն. այսօր բըղխեցեր ջուր կեն-
դանի յերուսաղէմ ‖ Հոգի Աստուծոյ ողորմեա։
Որ արարչակից ես Հօր և Որդւոյ. որով կենդանա-
ծնեալք ի ջուրս արարածք. այսօր որդիս Աստուծոյ
ծնանիս ի ջուրց. Հոգի։ Որ փառակից ես Հօր և
Որդւոյ. եւ քըննես ըզխորս Աստուծոյ. այսօր խո-
րագէտս իմաստից զայն մարս աշխարհի արարեր. Հոգի։

Հն. Որ երկայնամիտդ ես Տէր. քաղցր և աննախա-
կալ հանգո զհոգի քո ծառայից. ‖ զի մի դարձցի տնանկ
ամաչեցեալ յաւուրն ահեղ ատենին։ Զյիշատակ հրա-
ժարելոցն ի հաճոյս քեզ ընկալցիս. եւ զուխտըս մեր
ընկալ որպէս զԱբելին զնոյի և զԱբրահամուն. զի
մի դարձցի տնանկ ամաչեցեալ յաւուրն ահեղ ատե-
նին։ Ի խորան քում սիրողաց հանգուցես ըզծառայս
քո. եւ զհոգիս նոցա դասեսցես ընդ սուրբըս քո. զի։

Մծ. Որ յէութեանդ ես ընդ Հօր և սուրբ Հոգւոյն անըս-
կիզբն Որդի. խոնարհեցար ի հայրական ծոցոյ. մարդ
եղեալ մարմնացար ի կուսէն. բանալով զյազթումըն
մահու յանցանաց նախահօրըն. ‖ քեզ երգեմք ընդ
զօրըս հրեշտակացն. ի մէջ հովուացն, օրհնեալ ես
Քրիստոս նախայաւիտեան Բանդ։ Այսօր ծընար որ

ի Հօրէ յառաջ քան զյաւիտեանս Որդի. ճառագայթ փառաց և ծագումըն յանմեկնելի լուսոյն. աստղագուշակ տեսլեամբըն յայրին իջեալնի եւ ի մըսուր յանբանից բազմեալ. քեզ: Թագաւոր փառաց Քրիստոս և արարիչ բոլորից. Աստուած հըզօր իշխան Հայր հանդերձեալ լուսոյն. մանուկ երեւեալ այսօր անփոփոխելիդ ի յէութեան. քեզ:

ԻԶ. Այսօր ուրախացեալ ցընծան երկընից բազմութիւնքն. ի նմանակաւորս սուրբ եկեղեցւոյ. քանզի շնորհեցաւ մեզ քահանայապետ յաւիտենից. ի լուսաւորել զկաթուղիկէ սուրբ զեկեղեցի. || փառս մատուցք գալըստեան քո Տէր: Այսօր սուրբ լուսոյ հովանի եղեւ ըմեզ ի բարձանց. քանզի թագաւորն երկնաւոր եկաւորէ ի սուրբ եկեղեցի. եւ զօրք հրեշտակաց ծաւալեալ տօնեն ընդ մարդկան. փա:

— Փառք Հօր: Այսօր քահանայապետ ճըշմարիտ աստուածային օրինօքըն պատուեալ. կանգնէ ըզքառանկիւն սեղան խաչին. արժանապէս պատարագեալ բաշխէ զմարմին եւ զարիւնըն Տեառն. մաքրապէս մերձեցարուք փըրկեալըք նորա ժողովուրդք. եւ հայցեցէք ի Քրիստոսէ զի շնորհեսցէ ըզսա մեզ ընդ երկայն աւուրս:

— Այժմ և միշտ: Այսօր վերըստին նորոգեցաք ի յանիծից նախահօրն. ճաշակելով ըզմարմին և զարիւն Որդւոյն Աստուծոյ. օրհնեցէք ըզըսա հոգեւոր երգով:

Մաղթանք. Փառք հրաշափառ տէրութեան:

Ալէլուիա. Առաք. ընթերցուածքն. Լուսացայց սրբութեամբ:

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

### ՀԱՐՑ ԲԶ

Լոյսդ ի հայրական ծոցոյ ծագեալ հալածելով զխաւար մեղաց. կենարարըդ յայտնեցեր այսօր զխորհուրդ ընտրեալ քո աշակերտացն. ‖ Օրհնեալ եկեալդ ի փըրկութիւն մեզ. Աստուած հարցըն մերոց: Զոր օրհնեն դասք լուսեղէնք. զոտըս տաժանեալըս լըւացեր. զանիծիցըն մերկացեալ ի մէնջ ծածկոյթ ըզգեստ ծառայի սփածար. օրհնեալ: Անապականութեան աղբիւր զկենդանարարըդ բաշխեցեր զմարմինըդ քո. նորոգելով ըզմահացեալըն յանցանօք ի պատրանաց Թըշնամւոյն. օր:

Գ. Եկէք ճառագայթ փառաց Հօր և պատկեր բարերարութեան. որ ըզգեցար այսօր ըզգեստ ծառայական կերպի. ‖ ըզնա ամենայն ազինք օրհնեցէք հոգեւոր երգով: Որ անճառ խոնարհութեամբ ի մաքրութիւն ոտից աշակերտացն. ըզմարդկայինն ազգի զընացս ուղղեաց ի յերկինս. ըզնա: Որ բաշխմամբ կենդանարար խորհըրդոյ անապական ճաշակմամբն. հրաւիրեաց ըզմեզ յերկնից յարքայութիւնն. ըզնա:

### ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԲԶ

Զքեզ Հայր յառաջ քան զյաւիտեանս: 341:

### ՈՂՈՐՄԵԱ ԳԶ

Արկօղդ ըզլոյս որպէս զօթոց. այսօր անճառ խոնարհութեամբ ի վերնատունըն խորհըրդոյ ըզգեստ ծառայի ըսփածանիլ յանձն առեր. օրհնեմք զեկեալդ ի կամաւոր չարչարանս: Որում երկըրպագեն դասք հրեշտակաց խոնարհեցար ի լըւանալ զոտըս հողեղէնս. ըմբըշկել սոքօք ըզգարշապարս նախահօրն. ըմբըշկեա զհոգւոյ իմոյ զհիւանդութիւն: Որ ի խորհըրդըս փըրկական եկեղեցւոյ. բաշխեցեր աշակերտացն

զմարմինըդ քո․ նորոգելով զմահացեալսն ի ճաշակմանէ․ հաղորդս այսմ ընկալ զմեզ միայն մարդասէր։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԳԶ

Որ անըսկիզբն յէութեանդ ես Աստուած․ այսօր ըզգեցար ըզգեստ հողեղէն ծառայի՝ ծածկելով ըզմերկութիւն նախահօրն․ ‖ օրհնեալ եկեալդ ի փրկութիւն ազգի մարդկան։ Որ վերօրհնիս ի հրեղէն քերովբէից․ այսօր եկիր կամաւ ի վերնատունըն խորհըրդոյ․ լուացեր զաշակերտսըն յօրինակ փառացն մեր․ օրհնեալ։ Որ յաթոռ փառաց նըստիս ընդ Հօր․ այսօր բազմիլ ընդ աշակերտսըն յանձն առեր․ բաշխելով ըզմարմին և զարիւն քո սուրբ․ օրհնեալ։

Ա[illegible] Եւք

Որսացան զանձն արդարոյ, և զարիւն ամբիծ պարտաւոր առնէին։

Եղև Տէր ապաւէն իմ․ Աստուած օգնական յուսոյ իմոյ։

Քարոզ․ փառաւորեսցուք։

ՄԱՆԿՈՒՆՔ ԱԿ

Այսօր կանգնեցաւ․ աւազան մըկըրտութեան ի թողութիւն մեղաց մերոց։ Այսօր Տէրըն մեր․ լուանայր զոտս աշակերտացն և պատուիրէր զայս ասելով։ Մի ոմն ի ձէնջ եղբարք․ մատնելոց է զիս ի մահ և որոշի յաշակերտացդ։ Զայն լուեալ Պետրոսի․ ակնարկէր առ Յովհաննէս հարցանել թէ ով իցէ։ Բանըն զոր ասաց Յիսուս․ տըրտմեցոյց զիւր զաշակերտսն և խռովեցան․ ամենեքեան։

Աղօ Քոր․ Վասն խաղաղութեան։ Աղ․ Սուրբ ես Տէր։

Աղօ ՍԱՂՄՈՍ ՂԳ․ [illegible]

ԻԱ․ Որսացան զանձն արդարոյ, և զարիւն ամբիծ պարտաւոր առնէին։

Փխ․ Աստուած՝ վրէժխնդիր Տէր, Աստուած վրէժխնդիր յայտնեցաւ։

* Ներբլիաց․ տես ի Ջիկուցումն, էջ ծն։

Digitized by Google

Բարձր լեր որ դատիս զերկիր, հատո զհատուցումն ամբարտաւանից ։

Մինչև յե՞րբ մեղաւորք, Տէր, մինչև յե՞րբ մեղաւորք պարծեսցին ։

Բարբառեալ խօսեսցին զանիրաւութիւն, խօսեսցին ամենեքեան որ գործեն զանօրէնութիւն ։

Զժողովուրդս քո Տէր խոնարհ արարին, և զժառանգութիւն քո չարչարեցին ։

Զայրին և զպանդուխտն սպանին, զորբսն կոտորեցին, և ասացին, ոչ տեսանէ զայս Տէր, և ոչ ի միտ առնու Աստուած Յակոբայ ։

Իմացարուք անզգամք ժողովրդոց և անմիտք, մինչև յե՞րբ ոչ առնուք ի միտ ։

Որպէս զի թէ որ տնկեաց զունկն՝ ինքն ո՞չ լուիցէ. կամ որ ստեղծ զակն՝ ինքն ո՞չ տեսանիցէ ։

Որ խրատէ զազգս՝ որպէս թէ ո՞չ յանդիմանեսցէ, որ ուսուցանէ մարդոյ զգիտութիւն. Տէր ճանաչէ զխորհուրդս մարդկան՝ զի են ընդունայն ։

Երանի մարդոյ զոր խրատես դու Տէր, և յօրինաց քոց ուսուցանես դու նմա ։

Ցածուցանես դու նմա զաւուրս չարութեան, մինչև փորեսցի խորխորատ մեղաւորի ։

Ոչ մերժէ Տէր զժողովուրդ իւր, և զժառանգութիւն իւր ոչ առնէ անտես ։

Մինչև դարձցին իրաւունք յարդարութիւն, ընկալցին զնա ամենեքեան որք ուղիղ են սրտիւք ։

Ո՞ յարիցէ ընդ իս ի վերայ չարաց, կամ ո՞ հաւասարեսցէ ինձ ի վերայ այնոցիկ որ գործեն զանօրէնութիւն ։

Թէ ոչ Տեառն օգնեալ էր ինձ, փոքր մի ևս բնակեալ էր անձն իմ ի դժոխս ։

Եթէ ասէի թէ ահա սասանեցան ոտք իմ, ողորմութիւն քո Տէր օգնէր ինձ ։

Ըստ բազում ցաւոց սրտի իմոյ՝ մխիթարութիւն քո ուրախ առնէր զանձն իմ ։

Մի՛ հաւասարեսցէ քեզ աթոռ անօրէնութեան, որ պատճառէ զվաստակս ընդդէմ հրամանի ։

Որսացան զանձն արդարոյ, և զարիւն անմեղ պարտաւոր առնէին ։

Եղև Տէր ապաւէն իմ, Աստուած օգնական յուսոյ իմոյ ։

Digitized by Google

Հատուսցէ նոցա Տէր ըստ անօրէնութեան նոցա, ըստ չարութեան նոցա կործանեսցէ զնոսա Տէր Աստուած մեր։

## Ջնի Օրթի

### Սրբոյ Աւետարանիս որ ըստ Յովհաննու։ ԺԲ. 27։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս ասէ.

Բայց այժմ անձն իմ խռովեալ է. և զի՞նչ ասացից՝ եթէ Հայր ապրեցո զիս ի ժամանակէ աստի յայսմանէ. այլ վասն այնորիկ եկի ի ժամս յայս։ Հայր, փառաւորեա զանուն քո։ Եկն բարբառ յերկնից. և փառաւոր արարի, և դարձեալ փառաւոր արարից։ Եւ ժողովուրդն որ կայր և լսէր, ասէին որոտումն լինել. կէսքն ասէին, հրեշտակ խօսեցաւ ընդ նմա։ Պատասխանի ետ Յիսուս և ասէ. ոչ վասն իմ ինչ եկն բարբառս այս, այլ վասն ձեր։ Այժմիկ դատաստան է աշխարհիս այսորիկ, այժմիկ իշխան աշխարհիս այսորիկ ընկեսցի արտաքս. և ես յորժամ բարձրացայց յերկրէ, զամենեսին ձգեցից առ իս։ Զայս ասէր, նշանակեալ թէ որով մահու մեռանելոց իցէ։ Պատասխանի ետ նմա ժողովուրդն. մեք լուաք յօրինաց՝ եթէ Քրիստոսն յաւիտեան կայ, և դու զիա՞րդ ասես՝ թէ պարտ է բարձրանալ որդւոյ մարդոյ. ո՞վ է այն որդին մարդոյ։ Ասէ ցնոսա Յիսուս. փոքր միւս ևս ժամանակ լոյս ընդ ձեզ է. գնացէք մինչդեռ զլոյսն ունիք, զի մի՛ խաւար ձեզ հասցէ. զի որ գնայ ի խաւարի, ոչ գիտէ յո երթայ։ Մինչդեռ զլոյսն ընդ ձեզ ունիք, հաւատացէք ի լոյսն, զի որդիք լուսոյ եղիջիք։ Զայս խօսեցաւ Յիսուս, և չոգաւ թաքեաւ ի նոցանէ։ Եւ այնչափ նշանս արարեալ էր առաջի նոցա, և նոքա ոչ հաւատային ի նա. զի լցցի բանն Եսայեայ մարգարէի՝ զոր ասացն. Տէր, ո՞ հաւատաց ի լուր մեր, և բազուկ Տեառն ո՞ւմ յայտնեցաւ։ Վասն այնորիկ ոչ կարէին հաւատալ, զի միւսանգամ ասէ Եսայի, թէ կուրացոյց զաչս նոցա, և ապշեցոյց զսիրտս նոցա. զի մի՛ տեսցեն աչօք, և իմասցին սրտիւք, և դարձցին և բժշկեցից զնոսա։ Զայս ասաց Եսայի, զի ետես զփառս նորա, և խօսեցաւ վասն նորա։ Բայց սակայն և յիշխանաց անտի բազումք հաւատացին ի նա. այլ վասն փարիսեցւոցն ոչ յայտնէին, զի մի՛ ի ժողովրդենէն ելա-

Digitized by Google

նիցեն․ Քանզի սիրեցին զփառս մարդկան՝ առաւել քան զփառսն Աստուծոյ։ 43։

Երգ. Ճառագ։ Քար. խնդր։ Կեցո. է Բէ։ Աղ. Քում ամենազօր և հրաշալի տէրութեանդ։

---

# ԿԱՐԳ ՄԵԾԻ ՀԻՆԳՇԱԲԱԹԻՆ
## ՋԱՊԱՇԽԱՐՈՂՍՆ ԱՐՁԱԿԵԼՈՑ
### Ի ՑԵՐԵԿՆ

Յերրորդ ժամուն ժողովքն է դրան եկեղեցւոյն վասն արձակելոյ ապաշխարողացն։ Բայց թէ լինի ապաշխարող, և թէ ոչ, չկարէն խափանել պարտ է։ Եւ նախ ասէ Օրհնեալ Հոգիդ սուրբ Աստուած. ՍՂ. Ծ. Ողորմեա. է Բէ. Օրհնեմք զքեզ։ Մշ. Յամենայն ժամ։ Աշ. Եւ ես։ Քահ. Օրհնութիւն։ Եւ ապա ասէն ՍԱՂՄՈՍ է Բէ, փոխբղայս Զ։

Առաջին փոխբղայ. ՍԱՂՄՈՍ ԻԴ

Առ քեզ Տէր համբարձի զանձն իմ. Աստուած իմ ի քեզ յուսացայ՝ մի՛ ամաչեցից, և մի՛ ծիծաղեսցին զինև թշնամիք իմ։

Ամենեքեան որք համբերեն քեզ՝ մի՛ ամաչեսցեն, այլ ամաչեսցեն անօրէնք յունայնութեան իւրեանց։

Զճանապարհս քո Տէր ցոյց ինձ, և զշաւիղս քո ուսո ինձ։

Առաջնորդեա ինձ ի ճշմարտութեան քում և ուսո զիս, զի դու ես Աստուած փրկիչ իմ. և ես քեզ համբերի զօրհանապազ։

Յիշեա Տէր զգթութիւնս քո և զողորմութիւնս որ ենն յաւիտենից։

Զմեղս մանկութեան իմոյ և զանգիտութեան իմոյ մի՛ յիշեր, այլ յիշեա զիս Տէր ըստ ողորմութեան քում՝ վասն քաղցրութեան քո, զի քաղցր և ուղիղ ես Տէր։

Վասն այսորիկ օրէնսդէտ առնես զմեղաւորս ի ճանապարհի, առաջնորդես հեզաց ի դատաստանի, ուսուցանես հեզոց զճանապարհս քո։

Ամենայն ճանապարհք Տեառն ողորմութեամբ և ճշմարտութեամբ են այնոցիկ, որ խնդրեն զուխտ և զվկայութիւն նորա։

Digitized by Google

Վասն անուան քո Տէր քաւեա զմեղս իմ, զի բազում եղեն․ ո՞վ է մարդ որ երկնչի ի Տեառնէ․ օրէնսդէտ առնէ զնա ի ճանապարհ յոր և հաճեցաւ ։

Անձն նորա ի բարութեան հանգիցէ, և զաւակ նորա ժառանգեսցէ զերկիր ։

Զօրութիւն է Տէր երկիւղածաց իւրոց, և զկտակարանս իւր ուսուցանէ նոցա ։

Աչք իմ յամենայն ժամ առ Տէր, և նա հանէ յորոգայթէ զոտս իմ ։

Նայեա առ իս և ողորմեա ինձ, զի միամօր և աղքատ եմ ես ։

Նեղութիւնք սրտի իմոյ բազում եղեն յոյժ, և ի վըշտաց իմոց հան զիս ։

Տես զխոնարհութիւն իմ և զվաստակ իմ, և թող ինձ զամենայն մեղս իմ ։

Տես զթշնամիս իմ՝ զի բազում եղեն, ատելութիւն զոր ի նանիր ատեցին զիս ։

Պահեա զանձն իմ և փրկեա զիս, և մի՛ յամօթ եղէց՝ զի յուսացայ ի քեզ ։

Անմեղք և ուղիղք կցորդք եղեն ինձ, և ես քեզ համբերի․ փրկեա Աստուած զԻսրայէլ յամենայն նեղութեանց նորա ։

ՍԱՂՄՈՍ ԻԵ

Դատ արա ինձ Տէր զի ես յամբծութեան իմում գնացի, ի Տէր յուսացայ զի մի՛ եղէց հիւանդ ։

Փորձեա զիս Տէր, և քններ զիս, փորձեա զերիկամունս իմ և զսիրտ իմ ։

Ողորմութիւն քո Տէր առաջի աչաց իմոց, և հաճոյ եղէց ճշմարտութեան քում ։

Ոչ նստայց ես յաթոռս նանրաց, և ընդ անօրէնս ես ոչ մտից ։

Ատեցի ես զժողովս չարաց, և ընդ ամպարիշտս ես ոչ նստայց ։

Լուացայց սրբութեամբ զձեռս իմ, և շուրջ եղէց զսեղանով քո Տէր ։

Լսել ինձ զձայն օրհնութեան քո, և պատմել զամենայն սքանչելիս քո ։

Տէր սիրեցի զվայելչութիւն տան քո, և զտեղի յարկի փառաց քոց ։

Digitized by Google

Մի՛ կորուսաներ ընդ ամպարիշտս զանձն իմ, և մի՛ ընդ արս արիւնահեղս զկեանս իմ։

Որոց ձեռք իւրեանց յանօրէնութեան են, և աջ նոցա լի է կաշառօք։

Ես յամբծութեան իմում գնացի, փրկեա զիս Տէր և ողորմեա ինձ։

Ոտն իմ կացցէ յուղղութեան, յեկեղեցիս մեծս օրհնեցից զքեզ։

ՍԱՂՄՈՍ ԻԶ

Տէր լոյս իմ և կեանք իմ, ես յումմէ՞ երկեայց. Տէր ապաւէն կենաց իմոց, ես յումմէ՞ զողացայց։

Ի մերձենալ առ իս չարաց ուտել զմարմին իմ, նեղիչք իմ և թշնամիք իմ նոքա տկարացան և անկան։

Թէ պատրաստեսցի ի վերայ իմ պատերազմ, ոչ երկիցէ սիրտ իմ. թէ յարիցէ ի վերայ իմ ճակատամարտ, սակայն և այսուիկ ի քեզ Տէր յուսացայ։

Զմի խնդրեցի ի Տեառնէ և զնոյն աղաչեմ, բնակել ինձ ի տան Տեառն զամենայն աւուրս կենաց իմոց։

Տեսանել ինձ զվայելչութիւն Տեառն, և հրաման տալ ի տաճարի նորա։

Ծածկեաց զիս ի խորանի իւրում յաւուր չարի, ընդ յարկաւ արար զիս ի ծածկոյթ խորանի իւրում։

Ի վիմէ բարձր արարեր զիս, և այժմ բարձր արա զգլուխ իմ ի վերայ թշնամեաց իմոց։

Շուրջ եղէց և մատուցից ի խորանի նորա պատարագ օրհնութեան, օրհնեցից և սաղմոս ասացից Տեառն։

Լուր Տէր ձայնի իմում, զի կարդացի առ քեզ. ողորմեա ինձ և լուր ինձ, զի քեզ ասաց սիրտ իմ, և խնդրեցին երեսք իմ, զերեսս քո Տէր խնդրեցին։

Մի՛ դարձուցաներ զերեսս քո յինէն, և մի՛ խոտորիր բարկութեամբ ի ծառայէ քումմէ։

Օգնական իմ լեր Տէր, և մի՛ անարգեր զիս, և մի՛ թողուր զիս, Աստուած փրկիչ իմ։

Հայր իմ և մայր իմ թողին զիս, և Տէր ընկալաւ զիս։

Օրէնսդիր արա զիս Տէր ի ճանապարհի քում, առաջնորդեա ինձ ի շաւիղս քո ուղիղս։

Վասն թշնամեաց իմոց, մի՛ մատներ զիս ի ձեռս նեղչաց իմոց։

Յարեան ի վերայ իմ վկայք մեղաց, և ստեցին ինձ յանօրէնութեան իւրեանց։

Digitized by Google

Հաւատացի տեսանել զբարութիւն Տեառն յերկրին կենդանեաց. համբեր Տեառն և քաջալերեաց, զօրասցի սիրտ քո և համբեր Տեառն։

Փառք Հօր և Որդւոյ։ Այժմ և միշտ։

Քոր. Եւ ես խաղ։ Մող. Օրհնութիւն և փառք։

Երկրորդ գոբդոյ. ՍԱՂՄՈՍ ԻԷ

Առ քեզ Տէր կարդացի. Աստուած իմ, մի՛ լռեր յինէն. մի՛ երբեք լռիցես յինէն, նմանիցեմ այնոցիկ որ իջանեն ի գուբ։

Լուր Տէր ձայնի խնդրուածաց իմոց յաղաչել ինձ առ քեզ, ի համբառնալ ձեռաց իմոց ի տաճար սուրբ քո։

Մի՛ համարիր ընդ ամպարիշտս զանձն իմ, և մի՛ ընդ այնոսիկ որ գործեն զանօրէնութիւն՝ կորուսանէր զիս։

Որք խօսէին զխաղաղութիւն ընդ ընկերս իւրեանց, և չարութիւն է ի սիրտս նոցա։

Տուր նոցա, Տէր, ըստ գործս նոցա, ըստ անօրէնութեան գնացից նոցա հատո նոցա։

Ըստ գործոց ձեռաց նոցա հատո նոցա՝ զհատուցումն նոցա նոցին։

Ոչ իմացան նոքա զգործս Տեառն, և ոչ ի գործս ձեռաց նորա հայեցան. կործանեսցես զնոսա և այլ մի՛ շինեսցին։

Օրհնեալ է Տէր՝ զի լուաւ ձայնի աղօթից իմոց, Տէր օգնական իմ և պաշտպան իմ։

Ի նա յուսացաւ սիրտ իմ, օգնեցաւ և զուարճացաւ մարմին իմ. և ես կամօք իմովք խոստովան եղէց նմա։

Տէր զօրութիւն ժողովրդեան իւրոյ, ապաւէն փրկութեան օծելոյ իւրոյ։

Փրկեա զժողովուրդ քո, և օրհնեա զժառանգութիւնս քո, հովուեա և բարձրացո զնոսա մինչև յաւիտեան։

ՍԱՂՄՈՍ ԻԸ

Մատուցէք Տեառն, որդիք Աստուծոյ, մատուցէք Տեառն զորդիս խոյոց։

Մատուցէք Տեառն զփառս և զպատիւ, մատուցէք Տեառն զփառս անուան նորա. և երկիր պագէք Տեառն ի սրահ սրբութեան նորա։

Ձայն Տեառն ի վերայ ջուրց, և Աստուած փառաց որոտաց, և Տէր ինքն ի վերայ ջուրց բազմաց։

Digitized by Google

Ձայն Տեառն զօրութեանց, և ձայն Տեառն մեծվայելչութեանց ։

Ձայն Տեառն փշրէ զմայրս, և մանրէ Տէր զմայրսն Լիբանանու ։

Մանրեսցէ զնոսա որպէս զմատաղատունկն Լիբանանու, որ սիրելին է որպէս զորդիս միեղջերոյ ։

Ձայն Տեառն հատանէ զբոց հրոյ. ձայն Տեառն շարժէ զանապատն, և խռովեցուցանէ Տէր զանապատն Կադէս ։

Ձայն Տեառն հաստատէ զեղջերուս, և յայտնի առնէ զանտառս ։

Ի տաճարի նորա ամենայն որ ասեն զփառս նորա ։

Տէր զՋրհեղեղս զնստուցանէ և ցածուցանէ, թագաւորեսցէ Տէր յաւիտեան ։

Տէր զօրութիւն ժողովրդեան իւրոյ տացէ, և օրհնեսցէ զժողովուրդ իւր ի խաղաղութիւն ։

ՍԱՂՄՈՍ ԻԹ

Բարձր առնեմ զքեզ Տէր, զի ընկալար զիս, և ոչ ուրախ արարեր զթշնամին իմ յիս ։

Տէր Աստուած իմ կարդացի առ քեզ և բժշկեցեր զիս. Տէր հաներ ի դժոխոց զանձն իմ. փրկեցեր զիս յայնցանէ, որք իջանեն ի գուբ ։

Սաղմոս ասացէք Տեառն սուրբք նորա, խոստովան եղերուք յիշատակի սրբութեան նորա ։

Սրտմտութիւն է ի բարկութեան նորա, և կեանք են ի կամաց նորա ։

Ընդ երեկոյս հանգիցեն լալիք, առաւօտու եղիցի ուրախութիւն ։

Ես ասացի ի բարեկենդանութեան իմում, թէ ոչ սասանեցայց յաւիտեան ։

Տէր ի կամս քո ետուր գեղոյ իմոյ զօրութիւն, դարձուցեր զերեսս քո յինէն՝ և ես եղէ խռովեալ ։

Ես առ քեզ Տէր կարդացի, առ Աստուած իմ աղաղակեցի. զի՞նչ օգուտ է քեզ յարենէ իմմէ, թէ իջանեմ ես յապականութիւն ։

Մի թէ հո՞ղ խոստովան առնիցի առ քեզ, կամ պատմեսցէ զճշմարտութիւնս քո ։

Լուաւ ինձ Տէր և ողորմեցաւ, և Տէր եղև ինձ օգնական ։

Digitized by Google

Դարձոյց զսուգ իմ յուրախութիւն, զերծ յինէն զքուրձ, և ինձ զգեցոյց զուրախութիւն ։

Որպէս սաղմոս ասասցեն քեզ փառք իմ, և այլ մի՛ ևս զղջացայց. Տէր Աստուած իմ, յաւիտեան խոստովան եղէց քեզ ։

Փառք Հօր և Որդւոյ ։ Այժմ և միշտ ։

Քող. Նւ ևս խաղ ։ Մող. Օրհնութիւն և փառք ։

Երրորդ կանոնի . ՍԱՂՄՈՍ Լ

Ի քեզ Տէր յուսացայ, մի՛ ամաչեցից յաւիտեան. յարդարութեան քում փրկեա և ապրեցո զիս ։

Խոնարհեցո առ իս զունկն քո, վաղվաղեա կեցուցանել զիս ։

Լեր իմ Աստուած պաշտպան և տուն ապաւինի ապրեցուցանել զիս . զի հզօրիչ իմ և ապաւէն իմ ես դու ։

Վասն անուան քո առաջնորդեցեր ինձ և սնուցեր զիս, և հանցես զիս յորոգայթէ յայսմանէ որ թագուցաւ ինձ ։

Դու ես պաշտպան իմ Տէր, և ի ձեռս քո յանձն առնեմ զհոգի իմ ։

Փրկեցեր զիս Տէր Աստուած ճշմարտութեամբ քով . ատեցեր զայնոսիկ որ պահեն զերկիւղ ի սնոտիս ։

Ես ի Տէր յուսացայ, ցնծացայց և ուրախ եղէց ի փրկութեան քում ։

Հայեցար ի խոնարհութիւն իմ, և փրկեցեր ի վշտաց զանձն իմ. և ոչ մատնեցեր զիս ի ձեռս նեղչաց իմոց, և կացուցեր յանդորրու զոտս իմ ։

Ողորմեա ինձ Տէր, զի նեղեալ եմ ես . խռովեցաւ ի սրտմտութենէ ակն իմ՝ անձն իմ և փոր իմ ։

Պակասեցան ի ցաւոց կեանք իմ, և ամք իմ յոգւոց ելանելոյ ։

Աղքատացաւ ի տկարութենէ զօրութիւն իմ, և ոսկերք իմ խռովեցան ։

Քան զամենայն թշնամիս իմ եղէ ես նախատ դրացեաց իմոց, յոյժ ահ և երկիւղ ծանօթից իմոց ։

Ամենեքեան ոյք տեսանէին զիս, արտաքս փախչէին յինէն ։

Մոռացեալ եղէ ես որպէս մեռեալ ի սրտէ, և եղէ ես որպէս զանօթ կորուսեալ ։

Զի լուայ ես զբամբասանս բազմաց՝ որ շուրջ էին



Digitized by Google

զինեւ, ի ժողովել նոցա ի միասին առնուլ զանձն իմ խոր-
հեցան. այլ ես ի քեզ Տէր յուսացայ :

Ասացի՝ դու ես Աստուած իմ, եւ ի ձեռս քո է ժառան-
գութիւն իմ :

Փրկեա զիս ի ձեռաց թշնամեաց իմոց եւ ի հալածչաց
իմոց :

Երեւեցո զերեսս քո ի ծառայս քո, ապրեցո զիս Տէր
ըստ ողորմութեան քում. Տէր, մի՛ յամօթ եղէց զի կար-
դացի առ քեզ :

Ամաչեսցեն ամպարիշտք եւ իջցեն ի դժոխս. եւ համր
եղիցին շրթունք նենգաւորք՝ որք խօսէին զարդարոյ զա-
նիրաւութիւն, յամբարտաւանութեան եւ յանգոսնել ի-
րեանց :

Որպէս զի բազում է ողորմութիւն քաղցրութեան քո
Տէր, զոր պահեցեր երկիւղածաց քոց :

Արարեր դու այնոցիկ որք յուսացեալ են ի քեզ, ա-
ռաջի որդւոց մարդկան :

Ամրացուցեր զնոսա ի ծածկոյթ երեսաց քոց ի խռո-
վութենէ մարդկան :

Ծածկեցեր զնոսա ի խորանի քում ի հակառակութենէ
լեզուաց :

Օրհնեալ է Տէր, զի սքանչելիս արար զողորմութիւն
իւր ի քաղաք ամուր :

Ես ասացի ի զարմանալ իմում, թէ ընկեցայ ուրեմն
յերեսաց աչաց քոց :

Վասն այսորիկ լուար ձայնի աղօթից իմոց՝ յաղաղա-
կել իմում առ քեզ :

Սիրեցէք զՏէր, ամենայն սուրբք նորա, զի ստուգու-
թիւն խնդրէ Տէր, եւ հատուցանէ այնոցիկ որ առաւել
առնեն զամբարտաւանութիւն :

Քաջալերեսջարուք եւ զօրասցին սիրտք ձեր, ամենե-
քեան որք յուսացեալ էք ի Տէր :

## ՍԱՂՄՈՍ ԼԱ

Երանի ում թողութիւն եղեւ մեղաց, եւ ծածկեցան ա-
մենայն յանցանք նորա :

Երանի առն՝ որում ոչ համարեսցի Տէր զմեղս նորա,
եւ ոչ գոյ նենգութիւն ի բերան նորա :

Լռեցի ես եւ մաշեցան ամենայն ոսկերք իմ, առ ա-
ղաղակել ինձ առ Տէր զօրհանապազ ի տուէ եւ գիշերի:

Digitized by Google

*Ծանրեաց ձեռն քո ի վերայ իմ, դարձայ ի թշուառութիւն զի հարան յիս փուշք ։*

*Զմեղս իմ ցուցից քեզ, և զանօրէնութիւնս իմ ոչ ծածկեցից ի քէն ։*

*Ասացի թէ պատմեցից ինձէն զմեղս իմ, և դու թողցես զամենայն ամպարշտութիւնս մեղաց իմոց ։*

*Վասն այսորիկ յաղօթս կացցեն առ քեզ ամենայն սուրբք ի ժամ ընդունելի ։*

*Բայց միայն ի ջուրցն հեղեղաց բազմաց, որ առ նոսա ինչ ոչ մերձեսցի ։*

*Դու ես ապաւէն իմ ի նեղութենէ յայսմանէ, որ շուրջ եղեն զինև ։*

*Ցնծութիւն իմ, փրկեա զիս յայնցանէ՝ որ պաշարեցին զիս ։*

*Իմաստուն արարից զքեզ և խելամուտ ի ճանապարհ յոր և գնասցես, և հաստատեցից ի վերայ քո զաչս իմ ։*

*Մի լինիք որպէս զձի և զջորի զի ոչ գոյ ի նոսա իմաստութիւն. ի սանձս և ի դանդանաւանդս ճմլեսցես զկզակս նոցա, որ առ քեզ ինչ ոչ մերձենան ։*

*Բազում տանջանք են մեղաւորաց, բայց որք յուսան ի Տէր՝ ողորմութիւն Տեառն շուրջ եղիցի զնոքօք ։*

*Ուրախ եղերուք և ցնծացէք արդարք ի Տէր. պարծեցարուք ամենեքեան որք ուղիղ էք սրտիւք ։*

*Փառք Հօր և Որդւոյ ։ Այժմ և միշտ ։*

Քոր. *Եւ ես խաղ ։* Մող. *Օրհնութիւն և փառք ։*

Չորրորդ փառքդ. ՍԱՂՄՈՍ ԼԶ

*Մի նախանձիր ընդ չարս, մի ընդ այնոսիկ որ գործեն զանօրէնութիւն ։*

*Զի որպէս խոտ վաղվաղակի ցամաքեսցին, որպէս զդալարի խոտոյ վաղվաղակի անցցեն ։*

*Յուսա ի Տէր, և արա զքաղցրութիւն, բնակեա յերկրի՝ և հովուեսցիս ի մեծութեան նորա ։*

*Ճոխեա ի Տեառնէ՝ և նա տացէ քեզ զխնդրուածս սրտի քո. յայտնեա առաջի Տեառն զճանապարհս քո և յուսա ի նա ։*

*Նա արասցէ և հանցէ որպէս զլոյս զարդարութիւնս քո, և զիրաւունս քո որպէս զօր հասարակ ։*

*Հնազանդ լեր Տեառն՝ և ծառայեա նմա, և մի նա-*

Digitized by Google

խանձիր ընդ այնոսիկ՝ որոց առակեալ իցեն ճանապարհք իւրեանց, ընդ մարդոյ որ գործէ զանօրէնութիւն։

Լռեա ի բարկութենէ և հանգիր ի սրտմտութենէ, և մի՛ նախանձիր ընդ չարս։

Զարք վաղվաղակի սատակեսցին, բայց որք համբերեն Տեառն՝ նոքա ժառանգեսցեն զերկիր։

Փոքր մի և այլ ոչ ևս իցէ ամպարիշտն, խնդրեսցես զտեղի նորա և ոչ գտցես։

Այլ որ հեզքն են՝ նոքա ժառանգեսցեն զերկիր, և փափկասցին ի բազում խաղաղութեան իւրեանց։

Սպասէ մեղաւոր արդարոյ, և կրճտէ ի վերայ նորա զատամունս իւր. այլ Տէր ծիծաղեսցի զնովաւ։

Քանզի յառաջագոյն տեսանէ, զի հասեալ է օր նորա։

Սուր հանին մեղաւորք և լարեցին զաղեղունս իւրեանց՝ հարկանել զաղքատ և զտնանկ, սպանանել զայն որ խոնարհ է սրտիւ։

Սուրք նոցա մտցեն ի սիրտս նոցա և աղեղունք նոցա փշրեսցին։

Լաւ է սակաւիկ ինչ արդարոյ քան զբազում մեծութիւն մեղաւորաց, և բազուկք ամպարշտաց խորտակեսցին։

Հաստատէ Տէր զարդարս և ճանաչէ զաւուրս ամբծից, ժառանգութիւն նոցա յաւիտեան եղիցի։

Մի՛ ամաչեսցեն նոքա ի ժամանակս չարութեան, այլ յաւուրս սովոյ յագեսցին։

Ահա մեղաւորք կորիցեն, այլ թշնամիք Տեառն ի փառաւորել և ի բարձրանալ իւրեանց պակասեսցին որպէս ծուխ՝ զի պակասէ։

Փոխ առնու մեղաւորն և ոչ հատուցանէ, այլ որ արդարն է ողորմի և տայ։

Որք օրհնեն զՏէր՝ ժառանգեսցեն զերկիր, և որք անիծանեն՝ սատակեսցին ի նմանէ։

Ի Տեառնէ ուղղին գնացք առն, զճանապարհս նորա նա կամի յոյժ։

Թէպէտ և գայթագղեսցի, նա մի՛ կործանեսցի, զի Տէր ձեռնկալու է նորա։

Մանուկ էի ես և ծերացայ, և ոչ տեսի զարդար արհամարհեալ, և ոչ զզաւակ նորա՝ թէ մուրանայր հաց։

Digitized by Google

*Զօրհանապազ ողորմի և տայ փոխ, զաւակ Նորա օրհնեալ եղիցի յաւիտեան ։*

*Խոտորեա ի չարէ և արա զբարի, բնակեսցես յաւիտեանս յաւիտենից ի Նմա ։*

*Տէր սիրէ զիրաւունս, և ոչ ընդ վայր հարկանէ ըզսուրբս իւր, այլ յաւիտեան պահէ զնոսա ։*

*Անօրէնք հալածեսցին ի միասին, և զաւակ ամպարըշտաց սատակեսցի ։*

*Այլ արդարք ժառանգեսցեն զերկիր, և բնակեսցեն յաւիտեանս յաւիտենից ի Նմա ։*

*Բերան արդարոյ խորհի զիմաստութիւն, և լեզու Նորա խօսեսցի զիրաւունս ։*

*Օրէնք Աստուծոյ իւրոյ են ի սրտի իւրում, և մի՛ գայթագղեսցին գնացք Նորա ։*

*Հայի մեղաւորն ընդ արդար և խնդրէ սպանանել ըզնա, այլ Տէր ոչ թողու զնա ի ձեռս Նորա և ոչ դատապարտէ զնա՝ յորժամ դատի զնա ։*

*Համբեր Տեառն և պահեա զճանապարհս Նորա, և բարձր արասցէ զքեզ ի ժառանգել զերկիր, և զսատակումն մեղաւորաց տեսցես ։*

*Տեսի զամպարիշտն վերացեալ բարձրացեալ որպէս զմայրս Լիբանանու ։*

*Անցի՝ և ահա ոչ էր, խնդրեցի՝ և ոչ գտաւ տեղի Նորա ։*

*Պահեա զամբծութիւն, և տես զուղղութիւն. զի գոն մնացուածք առն խաղաղարարի ։*

*Անօրէնք հալածեսցին ի միասին, և զաւակ ամպարըշտաց կորիցէ ։*

*Փրկութիւն արդարոց ի Տեառնէ է, վերակացու է Նոցա ի ժամանակս Նեղութեան ։*

*Օգնեսցէ Նոցա Տէր և փրկեսցէ զնոսա. ապրեցուսցէ ի մեղաւորաց և կեցուսցէ զնոսա, զի յուսացան ի Նա ։*

*Փառք Հօր և Որդւոյ ։ Այժմ և միշտ ։*

*Քար. Եւ ես խաղ ։ Մաղ. Օրհնութիւն և փառք ։*

Հինգերորդ կանոն. ՍԱՂՄՈՍ ԼԷ

*Տէր մի՛ սրտմտութեամբ քով յանդիմաներ զիս, և մի՛ բարկութեամբ քո խրատեր զիս ։*

*Զի նետք քո հարան յիս, և յիս հաստատեցաւ ձեռըն քո ։*

Ոչ գոյ բժշկութիւն մարմնոյ իմոյ յերեսաց բարկութեան քոյ ։

Ոչ է խաղաղութիւն ոսկերաց իմոց յերեսաց մեղաց իմոց ։

Անօրէնութիւնք իմ բարձրացան քան զգլուխ իմ, որպէս բեռն ծանր ծանրացան ի վերայ իմ ։

Նեխեցան և փտեցան վէրք իմ յերեսաց անզգամութեան իմոյ ։

Տառապեցայ և խոնարհ եղէ յոյժ, զօրհանապազ տրտում գնայի, զի անձն իմ լի եղև չարչարանօք, և ոչ գոյ բժշկութիւն մարմնոյ իմոյ ։

Չարչարեցայ և խոնարհ եղէ մինչև յոյժ, մռնչէի առ հեծութեան սրտի իմոյ ։

Տէր առաջի քո է ամենայն ցանկութիւն իմ, և հեծութիւն իմ ի քէն ոչ ծածկեցաւ ։

Սիրտ իմ խռովեցաւ յիս և եթող զիս զօրութիւն իմ, լոյս աչաց իմոց՝ և այս ոչ եղև ընդ իս ։

Բարեկամք իմ և մերձաւորք իմ առաջի իմ մերձեցան և կացին, և մերձաւորք իմ հեռի եղեն յինէն ։

Բռնադատէին զիս և խնդրէին զանձն իմ. որք խնդրէին չար ի վերայ իմ՝ խօսեցան զանօրէնութիւն և զնենգութիւն զօրհանապազ խորհեցան ։

Այլ ես որպէս խուլ՝ զի ոչ լսէ, որպէս համր՝ որ ոչ բանայ զբերան իւր ։

Եղէ ես որպէս մարդ՝ որ ոչ լսէ, և ոչ գոն խօսք ի բերան նորա ։

Ես ի քեզ Տէր յուսացայ, և դու լուիցես ինձ, Տէր Աստուած իմ ։

Ասացի թէ մի՛ ուրախ եղիցին յիս թշնամիք իմ, ի սասանել ոտից իմոց՝ ի վերայ իմ մեծամեծս խօսեցան ։

Ես ի տանջանս պատրաստ եմ, և ցաւք իմ առաջի իմ են յամենայն ժամ ։

Զանօրէնութիւնս իմ պատմեցից, և հոգացայց վասն մեղաց իմոց ։

Իսկ արդ թշնամիք իմ կենդանի են, և զօրացեալ են քան զիս. և բազում էին որք ատէին զիս ի տարապարտուց ։

Որք հատուցին ինձ չար փոխանակ ընդ բարւոյ. չար խօսէին զինէն, զի ես երթայի զհետ արդարութեան ։

Digitized by Google

Մի՛ թողուր զիս, Տէր Աստուած իմ, և մի՛ ի բացեայ առնիր յինէն, հայեաց յօգնել ինձ, Տէր փրկութեան իմոյ ։

## ՍԱՂՄՈՍ ԼԸ

Ասացի թէ պահեցից զճանապարհս իմ, զի մի՛ մեղայց լեզուաւ իմով ։

Եդի պահապան բերանոյ իմոյ՝ ի հակառակել մեղաւո-րին առաջի իմ ։

Խուլ եղէ և խոնարհեցայ, լռեցի ի բարութենէ՝ և ցաւք իմ նորոգեցան յիս ։

Ջեռաւ սիրտ իմ ի փորի իմում, և ի խորհուրդս իմ վառեցաւ հուր ։

Խօսեցայ լեզուաւ իմով և ասացի. ցոյց ինձ Տէր ըզ-կատարած իմ և զթիւ աւուրց իմոց քանիօն է, զի գի-տացից թէ որչափ ինչ պակասեալ է յինէն ։

Ահա չափով եդիր զաւուրս իմ, և կար զօրութեան իմոյ որպէս ոչ ինչ է առաջի իմ. սակայն ամենևին ըն-դունայն է ամենայն մարդ մսեղի ։

Ապաքէն որպէս ի պատկերի շրջի մարդ, սակայն ի զուր խռովի, գանձէ և ոչ գիտէ ում ժողովէ ։

Իսկ արդ՝ ո՞վ է համբերութիւն իմ՝ թէ ոչ դու Տէր, կամ կար զօրութեան իմոյ՝ թէ ոչ ի քէն ։

Յամենայն անօրէնութենէ իմմէ փրկեցեր զիս, նա-խատինս անզգամաց արարեր զիս ։

Խուլ եղէ և ոչ բացի զբերան իմ, զի դու արարեր ։

Ի բաց արա յինէն զտանջանս իմ, զի ի զօրութենէ ձեռին քո ես պակասեցայ ։

Կշտամբութեամբ վասն մեղաց խրատեցեր զմարդ, մաշեցեր որպէս սարդիոստայն զանձն նորա. սակայն ընդունայն է ամենայն մարդ ։

Լուր Տէր աղօթից իմոց, ունկն դիր խնդրուածոց ի-մոց, արտասուաց իմոց մի՛ լռեր ։

Պանդուխտ եմ ես առաջի քո, նժդեհ և անցաւոր որ-պէս ամենայն հարք իմ ։

Թոյլ արա ինձ՝ զի հանգեայց մինչչև երթեալ իցեմ աստի ոչ ևս գտանիցիմ ։

## ՍԱՂՄՈՍ ԼԹ

Համբերելով համբերի Տեառն, և նայեցաւ առ իս, և լուաւ աղօթից իմոց ։

Digitized by Google

Եհան զիս ի գբոյ տառապանաց, ի կաւոյ և ի տղմոյ։

Հաստատեաց ի վերայ վիմի զոտս իմ, և ուղղեաց զգնացս իմ։

Արկ ի բերան իմ օրհնութիւն նոր, զօրհնութիւն Տեառն Աստուծոյ մերոյ։

Տեսցեն բազումք և երկիցեն և յուսասցին ի Տէր. երանեալ է այր որոյ անուն Տեառն յոյս է նորա։

Ոչ հայեցաւ նա ի նանրութիւն, և ոչ ի մոլութիւն սուտ։

Բազում արարեր դու Տէր Աստուած իմ զսքանչելիս քո. խորհրդոց քոց ոչ ոք է որ նմանէ քեզ։

Պատմեցի և խօսեցայ՝ և բազում եղեն քան զթիւ. ընդ զոհս և ընդ պատարագս ոչ հաճեցար, լսելիս հաստատեցեր ինձ. զողջակէզս և զվասն մեղացն ոչ խնդրեցեր։

Յայնժամ ասացի թէ ահաւասիկ գամ ես, ի գլուխս գրոց գրեալ է վասն իմ։

Առնել զկամս քո Աստուած իմ կամեցայ, և զօրէնս քո ի մէջ որովայնի իմոյ։

Աւետարանեցից զարդարութիւնս քո յեկեղեցիս մեծս. ահա շրթունս իմ ոչ արգելից ի քէն։

Տէր դու գիտացեր զի զարդարութիւնս քո ոչ ծածկեցի ի սրտի իմում, զճշմարտութիւն քո· և զփրկութիւն քո։

Ասացի և ոչ թաքուցի զողորմութիւնս քո, և զճշմարտութիւնս քո ի ժողովրդենէ մեծէ։

Այլ դու Տէր, մի՛ հեռի առներ զգթութիւնս քո յինէն. զի ողորմութիւն և ճշմարտութիւն քո յամենայն ժամ ընկալցի զիս։

Շուրջ եղեն զինև չարք՝ որոց ոչ էր նոցա թիւ. հասին ինձ անօրէնութիւնք իմ, և ես ոչ կարացի տեսանել։

Բազում եղեն քան զհեր գլխոյ իմոյ, և սիրտ իմ եթող զիս։

Կամեաց Տէր փրկել զիս, և Տէր յօգնել ինձ նայեաց։

Ամաչեսցեն և յամօթ լիցին որք խնդրէին զանձն իմ՝ բառնալ զնա. դարձցին յետս և ամաչեսցեն՝ որք խնդրէին ինձ չար։

Կրեսցեն զամօթ առժամայն վաղվաղակի, որ ասէին ինձ վաշ վաշ։

Digitized by Google

*Ցնծասցեն և ուրախ լիցին ի քեզ, ամենեքեան որ խնդրեն զքեզ, Տէր։*

*Ասասցեն յամենայն ժամ՝ մեծ է Աստուած, և որք սիրեն զփրկութիւնս քո։*

*Ես աղքատ և տնանկ եմ Աստուած, խորհեա զիս. օգնական և պաշտպան իմ ես, և դու Աստուած իմ մի՛ յամենար։*

*Փառք Հօր և Որդւոյ։ Այժմ և միշտ։*

*Քող. Եւ ես խաղ։ Մող. Օրհնութիւն և փառք։*

Վեցերորդ կանոնի. ՍԱՂՄՈՍ Խ

*Երանի որ խորհի զաղքատն և զտնանկն յաւուր չարի փրկէ զնա Տէր։*

*Տէր փրկէ զնա և կեցուցանէ, երանելի առնէ զնա ի վերայ երկրի, և ոչ մատնէ զնա ի ձեռս թշնամեաց իւրոց։*

*Տէր օգնական է նմա ի մահճս ցաւոց իւրոց, զամենայն անկողինս նորա դարձուցանէ ի հիւանդութենէ նորա։*

*Ես ասացի Տէր ողորմեա ինձ, բժշկեա զանձն իմ, ես մեղայ քեզ։*

*Թշնամիք իմ ասացին ինձ չար, ե՞րբ իցէ զի մեռցի և կորիցէ անուն նորա։*

*Մտանէր տեսանել զնանրութիւն, խօսէր ի սրտի իւրում. ժողովէր զանօրէնութիւնս յանձն իւր։*

*Արտաքս ելանէր և զնոյն խօսէր, զինէն շշնջէին ամենայն թշնամիք իմ։*

*Խորհեցան չար ի վերայ իմ, բան անօրէնութեան եդին ի վերայ իմ։*

*Միթէ որ ննջիցէն՝ այլ ո՞չ ևս յաւելուցու յառնել. քանզի և այրն խաղաղութեան իմոյ՝ յոր և եսն յուսացայ։*

*Որ ուտէր զհաց իմ, յաճախեաց առնել ինձ խաբէութիւն։*

*Այլ դու Տէր ողորմեա ինձ, կանգնեա զիս, և հատուցից նոցա։*

*Ցայսմ ծանեայց թէ հաճեցար ընդ իս, զի մի՛ ուրախ եղիցին յիս թշնամիք իմ։*

*Այլ զիս յամբծութեան իմում ընկալար, հաստատեցեր զիս առաջի քո յաւիտեան։*

Digitized by Google

Օրհնեալ Տէր Աստուած Իսրայելի յաւիտեանս յաւիտենից. եղիցի եղիցի։

## ՍԱՂՄՈՍ ԽԱ

Որպէս փափաքէ եղջերու յաղբերս ջուրց, այնպէս փափաքէ անձն իմ առ քեզ Աստուած։

Ծարաւի է անձն իմ առ քեզ, Աստուած հզօր և կենդանի. ե՞րբ եկից երևեցայց երեսացդ Աստուծոյ։

Եղեն ինձ արտասուք իմ կերակուր ի տուէ և ի գիշերի, և այն զի ասէին ցիս զօրհանապազ՝ թէ ո՞ւր է Աստուած քո։

Զայս որպէս յիշէի՝ տառապէր յիս անձն իմ. քաջալերէի զի մտից ընդ յարկաւ սքանչելեաց տանն Աստուծոյ։

Ի ձայն ցնծութեան խոստովանութեան, և ի ձայն բարեկենդանութեան։

Արդ ընդէ՞ր տրտում ես, անձն իմ, կամ ընդէ՞ր խռովես զիս. յուսա առ Աստուած, խոստովանեա նմա, փրկիչ երեսաց իմոց Աստուած է։

Անձն իմ յոյժ խռովեցաւ, վասն այսորիկ յիշեցի զքեզ յերկրէն Յորդանանու, ի Հերմոնէ ի լեռնէ փոքուէ։

Խորք ի խորոց կարդացին առ քեզ, ի ձայն սահանաց քոց։

Ամենայն զբօսանք քո և ալիք քո անցին ի վերայ իմ։

Ի տուէ պատուիրեաց Տէր զողորմութիւն իւր, գիշերի զօրհնութիւն նորա. և աղօթք իմ առ Աստուած վասն կենաց իմոց։

Ասացի Աստուծոյ՝ ընդունելի իմ ես. ընդէ՞ր մերժեցեր զիս, ընդէ՞ր տրտում գնամ ես ի նեղել թշնամւոյ իմոյ։

Ի փշրել ոսկերաց իմոց նախատեցին զիս թշնամիք իմ, յասել ցիս զօրհանապազ՝ թէ ո՞ւր է Աստուած քո։

Արդ ընդէ՞ր տրտում ես, անձն իմ, կամ ընդէ՞ր խռովես զիս. յուսա առ Աստուած, խոստովանեա նմա, փրկիչ երեսաց իմոց Աստուած է։

## ՍԱՂՄՈՍ ԽԲ

Դատ արա ինձ Աստուած, և իրաւ արա ինձ ի դատաստանի իմում։

Յազգէ որ ոչ է սուրբ, ի մարդոյ մեղաւորէ նենգաւորէ փրկեա զիս։

Դու Աստուած հզօրիչ իմ ես, ընդէ՞ր մոռացար զիս, ընդէ՞ր տրտում գնամ ես ի նեղել թշնամւոյ իմոյ։

Առաքեա Տէր զլոյս քո և զճշմարտութիւն քո զի առաջնորդեսցեն ինձ, հանցեն զիս ի լեառն սուրբ և ի յարկս քո ։

Մտից առաջի սեղանոյ Աստուծոյ, առ Աստուած որ ուրախ առնէ զմանկութիւն իմ ։

Խոստովան եղէց քեզ օրհնութեամբ, Աստուած Աստուած իմ ։

Արդ ընդէ՞ր տրտում ես, անձն իմ, կամ ընդէ՞ր խռովես զիս. յուսա առ Աստուած, խոստովանեա նմա, փրկիչ երեսաց իմոց Աստուած է ։

Փառք Հօր և Որդւոյ ։ Այժմ և միշտ ։

Քար. Եւ ևս խաղ ։ Մաղ. Օրհնութիւն և փառք ։

Աղօթք Յովնանու մարգարէին ։ Բ. 3 ։

Ի նեղութեան իմում ես առ Տէր կարդացի. լուաւ Աստուած յանդնդոց դժոխոց աղաղակի իմում ։

Լուր Տէր ձայնի իմում, զի ընկեցեր զիս ի խորս ծովու, և շրջանք գետոց պաշարեցին զիս ։

Ամենայն զբօսանք քո և ալիք քո անցին ի վերայ իմ. և ասացի, թէ մերժեցայ ուրեմն յերեսաց աչաց քոց ։

Արդ իցէ՞ թէ յաւելից հայել ի տաճար սուրբ քո. զի հեղան զինև ջուրք մինչև յանձն իմ, և անդունդք անհնարինք պաշարեցին զիս ։

Եմուտ գլուխ իմ ընդ փապարս լերանց՝ իջի ես ի խորս երկրի, և տեսի զնիգս նորա, զի էին որպէս աղխք յաւիտենից. և ելցեն յապականութենէ կեանք իմ ։

Առ քեզ Տէր Աստուած իմ ի նուաղել անձին իմոյ կարդացի, և զքեզ Տէր յիշեցի. և մտցեն աղօթք իմ ի տաճար սուրբ քո ։

Զի որք պահէին զունայնութիւն և զստութիւն, յողորմութենէ իւրեանց մերժեցան ։

Այլ ես ի ձայն օրհնութեան խոստովան եղէց քեզ. մատուցից պատարագս Տեառն, և կատարեցից զուխտ իմ ի փրկութեան ։

Եւ է ձայնիւ անկեալ ստանին ողբայոյն.

ՇԱՐԱԿԱՆ ԴԿ. ՍՏ.

Զարհուրեալ դողացաւ ամենամեղ անձն իմ. յահեղ քոց դատաստանաց. յանդերձեալ տանջանացն ։ Երեք երկնէ ։

Դարձեալ աղօթք Յովնանու մարգարէին․

Ի նեղութեան իմում ես առ Տէր կարդացի։ 411 ։

ՇԱՐԱԿԱՆ ԴԿ․ ՄՏ

Քանզի կամաւ մերձեցաւ սամեյ ի մեղքս մեծամեծս․ որդ կայ և միայն ինձ․ աններելի պատուհան ։ Երկիցս կրկնեա ։

Դարձեալ աղօթք Յովնանու մարգարէին․

Ի նեղութեան իմում ես առ Տէր կարդացի ։ 411 ։

ՇԱՐԱԿԱՆ ԴԿ․ ՄՏ

Արդ անկեալ աղաչեմ սամ․ փրկիչ եւ բարերար․ խնայեա յիս ի մեղուցեալս․ եւ ողորմեա ինձ բազմամեղիս ։ Երկիցս կրկնեա ։

Փառք Հօր և Որդւոյ։ Այժմ և միշտ ։

Եւ ապա ասեն․

Տէր ամենակալ Աստուած Աբրահամու Իսահակայ Յակովբայ և զաւակի Նոցա արդարոց․ ամենակալ Տէր Թող զմեղս իմ ։

Որ արարեր զերկինս և զերկիր և զամենայն զարդ Նոցա․ ամենակալ ։

Որ կապեցեր զծով բանիւ Հրամանի քո․ փակեցեր զխորս, կնքեցեր ահաւոր և փառաւորեալ անուամբ քով սրբով․ ամենակալ ։

Որ ամենայն ինչ սարսէ և դողայ յերեսաց ահի զօրութեան քո ․ ամենա ։

Անբաւ է մեծվայելչութիւն փառաց սրբութեան քո, և սաստիկ է բարկութիւն սպառնալեաց քոց ի վերայ մեղաւորաց ․ անչափ և անքննին են ողորմութիւնք աւետեաց քոց ․ ամենա ։

Դու Տէր բարձեալ, գթած, երկայնամիտ, բազումողորմ․ և զղջանաս ի վերայ չարեաց մարդկան․ ամենա։

Դու Աստուած ոչ եդեր ապաշխարութիւն վասն արդարոցն Աբրահամու, Իսահակայ և Յակովբայ, որք ոչ մեղան քեզ ․ ամենա ։

Այլ եդեր ապաշխարութիւն վասն իմ մեղաւորիս․ զի մեղայ աւելի քան զաւազ ծովու և բազմացան անօրէնութիւնք իմ․ ամենա ։

Զեմ արժանի հայել և տեսանել զբարձրութիւնս եր-կնից ի բազմութենէ անօրէնութեան իմոյ. ամենա։
Կորացեալ եմ ես ի բռնութենէ կապանաց երկաթից և ոչ գոյ ինձ հանգիստ. ամենա։
Բարկացուցի զողորմութիւն, և զչար առաջի քո ա-րարի. կանգնեցի պատկեր՝ և բազմացուցի զցասումն քո. ամենա։
Եւ արդ Տէր խոնարհեցուցանեմ զծունկս սրտի իմոյ, և հայցեմ ի քաղցրութենէ քումմէ. ամենա։
Մեղայ Տէր մեղայ, և զանօրէնութիւնս իմ ես ինձէն գիտեմ. ամենա։
Աղաչեմ և խնդրեմ ի քէն, թող ինձ Տէր, թող ինձ. և մի կորուսաներ զիս ըստ անօրէնութեան իմոյ. ամե։
Մի՛ յաւիտեան բարկանար ինձ Տէր. և մի՛ յիշեր ըզ-չարիսն իմ, և մի՛ պարտաւորեր զիս ընդ իջեալս ի ներ-քոյ երկրի չարեօք. ամենա։
Զի դու Աստուած՝ Աստուած ապաշխարողաց ես. և յիս ցոյց զքաղցրութիւնդ քո, որ անարժան եմ. ամե։
Կեցուսցես զիս ըստ բազում ողորմութեան քում. և ես օրհնեցից զքեզ զամենայն աւուրս կենաց իմոց. ամե։
Զքեզ Տէր օրհնեն ամենայն զաւրութիւնք երկնից. և քո են փառք յաւիտեանս. ամէն։

ՇԱՐԱԿԱՆ ԴԿ. ՍՏ

Ամենակալ. քաւեա զմեղս իմ զի Աստուած ես ապաշխարողաց։ Երիցս կրկնել։

Այս փոխեալ ասէն.

Տէր ամենակալ Աստուած Աբրահամու իսահակայ։ 412։

ՇԱՐԱԿԱՆ ԴԿ. ՍՏ

Եւ զՀոգիդ սուրբ. մի հաներ յինէն զի Աստ-ուած ես ապաշխարողաց։ Երիցս կրկնել։

Եւ փոխեալ ասէն.

Տէր ամենակալ Աստուած Աբրահամու իսահակայ։ 412։

ՇԱՐԱԿԱՆ ԴԿ. ՍՏ

Եւ փրկեա զիս. յամհամգին հրոյն. զի Աստ-ուած ես ապաշխարողաց։ Երիցս կրկնել։

Փառք Հօր և Որդւոյ ։ Այժմ և միշտ ։

Աղաչեմ և խնդրեմ ի քէն Տէր՝ թող ինձ զմեղս իմ ։

Բազումողորմ Տէր, ողորմեա ինձ ։

Աստուած, քաւեա զիս զմեղաւորս ։

Արարիչ իմ և յոյս Աստուած, գթա յիս ի մեղուցեալ ծառայս, և ողորմեա ինձ բազմամեղիս ։

Ամէնօրհնեալ սրբուհի և միշտ կոյս Աստուածածին Մարիամ, բարեխօսեա առ Տէր վասն իմ մեղաւորիս ։

Ամենայն սուրբք Աստուծոյ, բարեխօսեցէք առ Հայր յերկինս վասն մեր մեղաւորացս ։

Քրիստոս Որդի Աստուծոյ անոխակալ, ընկալ զաղաչանս մեր, զի ի քեզ են ապաւինեալ անձինք մեր ։

Յաղթող զօրութեամբ սուրբ և կենդանարար և պատուական խաչիւ քո Տէր պահպանեա զմեզ ։

Առաքեա Տէր զհրեշտակ խաղաղութեան քո. որ եկեալ պահեսցէ զմեզ անխռով ի տուէ և ի գիշերի ։

Եւ մարդասիրութեամբ քո յիշեա զմեզ Տէր, յիշեա զմեզ, յորժամ գաս արքայութեամբ քո և ողորմեա մեզ ։

Ձայնէ Քարոզ.

Եկեալքս ի խոստովանութիւն ապաշխարութեան հաւատով զյոյս միածնի Որդւոյն Աստուծոյ դիցուք ի սիրտս մեր, խնդրելով ի Նմանէ զքաւութիւն և զթողութիւն յանցանաց մերոց ։ Վասն զի Նա ինքն է Նախախնամողն Աստուած յաւիտենական, որ եկն կամաւ Հօր ի փրկել զարարածս. և առաց զինքն լինել քաւիչ մեղաւորաց, յոյս ապաշխարողաց, շնորհելով հանգիստ աշխատելոց, ընդունելով զծանրաբեռնեալքս և զտաժանեալքս մեղօք յապաշխարութիւն քաւութեան. Արդ եկայք ամենեքեան խոնարհեալ անձամբ, բեկեալ սրտիւ անկցուք և լացցուք առաջի Տեառն արարչին մերոյ, զի անցուսցէ ի մէնջ զցասումն պատուհասի յանցանաց մերոց բարերարութեամբն իւրով ։ Ամենակալ Տէր Աստուած մեր, կեցո և ողորմեա ։

Աղօթք

Տէր Աստուած փրկութեան մերոյ, որ ողորմածդ ես և գթած, երկայնամիտ, բազումողորմ, և զղջանաս ի վերայ չարեաց մարդկան. որ ոչ կամիս զմահ մեղաւորին,

այլ զդառնալ նորա ի չար ճանապարհէն և զկեալն ։ Դու Տէր առատ ողորմութեամբ քով մխիթարեա զծառայքս քո, և տուր սոցա տեղի ապաշխարութեան․ հաշտեա մարդասիրութեամբ քո, և արա զսոսա անդամս եկեղեցւոյ քում սրբոյ ։ Որպէս զի առողջացեալք հոգւով, խոստովանութեամբ և ապաշխարութեամբ մտցեն յեկեղեցի քո սուրբ․ և ընդ ժողովրդեան քում քեզ հանցեն զօրհնութիւն և զփառս Հօր և Որդւոյ և Հոգւոյդ սրբոյ․ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից․ ամէն ։

Առ․ ՍԱՂՄՈՍ Ծ․ ողբաձայն․

Կց․ Ցօղեա յիս մշտկաւ և սուրբ եղէց, լուա և քան զձիւն սպիտակ եղէց ։

Փխ․ Ողորմեա ինձ Աստուած, ըստ մեծի ողորմութեան քում, ըստ բազում գթութեան քում քաւեա զանօրէնութիւնս իմ ։

Առաւել լուա զիս յանօրէնութենէ իմմէ, և ի մեղաց իմոց սուրբ արա զիս ։

Զանօրէնութիւնս իմ ես ինձէն գիտեմ, և մեղք իմ առաջի իմ են յամենայն ժամ ։

Քեզ միայն մեղայ Տէր, և զչար առաջի քո արարի ։

Որպէս արդար եղիցիս ի բանս քո, և յաղթեսցես ի դատելն քո ։

Անօրէնութեամբ յղացաւ, և ի մեղս ծնաւ զիս մայր իմ ։

Դու Տէր զճշմարտութիւն սիրեցեր, զանյայտս և զծածկեալս իմաստութեամբ քով յայտնեցեր ինձ ։

Ցօղեա յիս մշտկաւ և սուրբ եղէց, լուա և քան զձիւն սպիտակ եղէց ։

Լսելի արա ինձ զցնծութիւն և զուրախութիւն, և ցնծասցեն ոսկերք իմ տառապեալք ։

Դարձո զերեսս քո ի մեղաց իմոց, և զամենայն անօրէնութիւնս իմ քաւեա յինէն ։

Սիրտ սուրբ հաստատեա յիս Աստուած, և հոգի ուղիղ նորոգեա ի փորի իմում ։

Մի՛ ընկենուր զիս Տէր յերեսաց քոց, և զՀոգի քո սուրբ մի՛ հաներ յինէն ։

Տուր ինձ ցնծութիւն փրկութեան, և հոգւով պետութեան քո հաստատեա զիս ։

Digitized by Google

Ուսուցից անօրինաց զճանապարհս քո, և ամպարիշտք առ քեզ դարձցին ։

Փրկեա զիս յարենէ Աստուած, Աստուած փրկութեան իմոյ. ցնծասցէ լեզու իմ յարդարութեան քում ։

Տէր, եթէ զշրթունս իմ բանաս, բերան իմ երգեսցէ զօրհնութիւնս քո ։

Թէ կամեցեալ էիր· պատարագս մատուցանէաք, բայց դու ընդ ողջակէզս իսկ ոչ հաճեցար ։

Պատարագ Աստուծոյ՝ հոգի խոնարհ, զսիրտ սուրբ և զհոգի խոնարհ Աստուած ոչ արհամարհէ ։

Բարի արա Տէր կամօք քովք Սիովնի, և շինեսցին պարիսպքն Երուսաղեմի ։

Յայնժամ հաճեսցիս ընդ պատարագս արդարութեան, ուխտից պատարագս հանցեն ի սեղան քո զուարակս ։

Ընթերցուած յԵսայեայ մարգարէէ: Կ. 21:

Եւ կատարեսցին աւուրք սգոյ քոյ. և ժողովուրդ քո ամենեքին արդար, և յաւիտեանս ժառանգեսցեն զերկիր, պահել զնորատունկ գործոյ ձեռաց իւրեանց ի փառս ։ Սակաւաւորն հազարաւոր եղիցի, և կրտսերն յազգ մեծ. զի ես Տէր ընդ ժամանակս ժամանակս ժողովեցից զնոսա ։ 22 ։

Ընթերցուած յԵզեկիելէ մարգարէէ: ԼԶ. 24:

Այսպէս ասէ Տէր, և առից զձեզ ի հեթանոսաց, և ժողովեցից զձեզ յամենայն ազգաց, և տարայց զձեզ յերկիրն ձեր ։ Եւ ցանեցից ի վերայ ձեր ջուր սուրբ. և սրբեսջիք յամենայն պղծութեանց ձերոց, և յամենայն կռոց ձերոց սրբեցից զձեզ. և տաց ձեզ սիրտ նոր, և ոգի նոր նորոգեցից ի ձեզ. և հանից զսիրտն քարեղէն ի մարմնոց ձերոց, և տաց ձեզ սիրտ մարմնեղէն, և զոգի իմ տաց ձեզ ։ Եւ արարից՝ զի յարդարութիւնս իմ գնասջիք, և զիրաւունս իմ պահիցէք և առնիցէք զնոսա. և բնակիցէք յերկրին՝ զոր ետու հարցն ձերոց, և եղիջիք ինձ ի ժողովուրդ և ես եղէց ձեզ յԱստուած ։ Եւ զերծուցից զձեզ յամենայն պղծութեանց ձերոց, և կոչեցից զցորեան և բազմացուցից զնա, և ոչ ածից ի վերայ ձեր սով ։ Եւ բազմացուցից զպտուղ ծառոց, և զարդիւնս անդոց, զի մի՛ ևս ընդունիցիք զնախատինս սովոյ ի մէ ազգաց ։ Եւ յիշեսջիք զճանապարհսն ձեր չարս և զգնա-

Digitized by Google

ցըս ձեր զանբարիս , և տաղտկալչիք յերեսաց անօրէ-նութեանցն ձերոց և ի գարշելեացն ձերոց : 31 :

Պօղոսի առաքելոյն յԵբրայեցւոց թղթոյն է ընթերցուած: Ժ. 19:

Ունիմք այսուհետև եղբարք , համարձակութիւն ի մուտս սրբութեանցն արեամբն Յիսուսի , զոր նորոգեաց մեզ ճանապարհ նորոգ և կենդանի ի ձեռն վարագուրին , այսինքն է՝ մարմնոյ իւրոյ . և քահանայ մեծ ի վերայ տանն Աստուծոյ . մատիցուք ճշմարիտ սրտիւք , լրու-թեամբ հաւատոց , լուացեալ զսիրտս ի խղճէ չարեաց և մկրտեալ զմարմին ի ջուրն սրբութեան . պինդ կալցուք զխոստովանութիւն անշարժ յուսոյն , զի հաւատարիմ է որ խոստացաւն : Եւ զգուշասցուք միմեանց յորդորմամբք սիրոյ և գործոց բարեաց . և մի՛ թողցուք զժողովս մի-մեանց , որպէս սովոր են ոմանք . այլ մխիթարեսցուք , և այնչափ ևս առաւել՝ որչափ տեսանիցէք զօրն մերձեալ : Զի կամակար մտօք եթէ յանցանիցեմք յետ ընդունելու-թեան գիտութեան ճշմարտութեանն՝ այնուհետև ոչ ևս պիտոյ է վասն մեղաց պատարագ , այլ ահեղ ակնկա-լութիւն դատաստանին , և նախանձ հրոյն որ ուտիցէ զհակառակորդսն : Արհամարհեալ ուրուք զօրէնսն Մովսի-սի , առանց ողորմութեանց՝ առ երկուք կամ երիւք վը-կայիւք մեռանէր . իսկ ո՞րչափ սաստիկ պատժոց արժա-նի համարիցիք զայն , որ զՈրդին Աստուծոյ առ ոտն ե-հար , և զարիւն նորոյ ուխտին խառնակ համարեցաւ՝ ո-րով սրբեցաւն , և զհոգին շնորհաց թշնամանեաց : Այլ գիտեմք զայն որ ասացն . իմ են վրէժխնդրութիւնք և ես հատուցից , ասէ Տէր . և դարձեալ՝ թէ դատի Տէր զժողովուրդ իւր : Ահ մեծ է անկանել ի ձեռս Աստուծոյ կենդանւոյ : 31 :

Աղ· ՍԱՂՄՈՍ ԽԱ . յայնժ· .

Որպէս փափաքէ եղջերու յաղբերս ջուրց , այնպէս : 410 :

Ալէլուիա , Օրթի

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու : Է. 36 :

ԶՏէրն մեր Յիսուս Քրիստոս

Աղաչէր ոմն ի փարիսեցւոցն՝ զի կերիցէ հաց ընդ նր-

մա. և մտեալ ի տուն փարիսեցւոյն՝ բազմեցաւ։ Եւ կին մի էր ի քաղաքին մեղաւոր. իբրև գիտաց թէ բազմեալ է ի տան փարիսեցւոյն, բերեալ շիշ մի իւղոյ ազնուի, կայր յետոյ առ ոտս նորա, լայր. և արտասուօքն սկսաւ թանալ զոտս նորա, և հերով գլխոյ իւրոյ ջնջէր, և համբուրէր զոտս նորա, և օծանէր իւղովն։ Եւ տեսեալ փարիսեցւոյն որ կոչեացն զնա, ասէր ընդ միտս իւր. սա թէ մարգարէ ոք էր, ապա գիտէր թէ ով և որպիսի ոք կին մերձենայ ի սա. զի մեղաւոր է։ Պատասխանի ետ Յիսուս և ասէ ցնա. Սիմովն, ունիմ ինչ ասել քեզ։ Եւ նա ասէ. ասա վարդապետ։ Եւ ասէ. երկու պարտապանք էին ուրումն փոխատուի. մին պարտէր հինգ հարիւր դահեկան, և միւսն յիսուն. և իբրև ոչ գոյր նոցա հատուցանել, երկոցունց շնորհեաց. արդ ասա՝ ո՞վ առաւել սիրեսցէ զնա։ Ասէ Սիմովն. ինձ այսպէս թուի՝ եթէ որում զբազումն շնորհեաց։ Եւ նա ասէ ցնա. ուղիղ դատեցար։ Եւ դարձեալ ի կինն կողմն, ասէ ցՍիմովն. տեսանե՞ս զայս կին. մտի ի տուն քո՝ ջուր ոտից իմոց ոչ ետուր, իսկ սա արտասուօք իւրովք եթաց զոտս իմ, և հերով իւրով ջնջեաց. համբոյր մի դու ոչ ետուր ինձ, սա աւասիկ յորմէ հետէ մտեալ եմ ոչ դադարեաց ի համբուրելոյ զոտս իմ. իւղով զգլուխ իմ ոչ օծեր, սա իւղով անուշիւ օծ։ Վասն որոյ ասեմ քեզ. թողեալ լիցին սմա մեղք իւր բազումք, զի յոյժ սիրեաց. զի որում շատ թողուցու՝ շատ սիրէ, և որում սակաւ՝ սակաւ։ Եւ ասէ ցնա. թողեալ լիցին քեզ մեղք քո։ Եւ սկսան որ բազմեալն էին ընդ նմա՝ ասել ընդ միտս իւրեանց. ո՞վ է սա՝ որ զմեղս թողու։ Եւ նա ասէ ցկինն. հաւատք քո կեցուցին զքեզ, երթ ի խաղաղութիւն։ 50։

Ապա սարկաւագն քարոզէ

Եւ ևս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք։ Լուիցէ Տէր ձայնի աղաչանաց մերոց, ամենակալ Տէր Աստուած մեր կեցո և ողորմեա։

Ժող. Տէր ողորմեա, Տէր ողորմեա, Տէր ողորմեա։

Եւ ապա կարդայ զաղօթսն, զոր ասացեալ է սրբոյն Բարսղի Կեսարու Հայրապետին ի վերայ ապաշխարողաց։

Տէր Աստուած Հայր ամենակալ արարիչ երկնի և եր-

կրի, որ յակնարկել բարերար կամաց քոց գոյացուցեր զամենայն արարածս, զերևելիս և զաներևոյթս զերկնային և զերկրայինս. և նախախնամութեամբ քով ստեղծեր զմարդն ի հողոյ, և ըստ պատկերի բարերարութեանդ պատուեալ մեծարեցեր զնա, շնորհելով նմա զանմահութեան և զանապականութեան զկենդանութիւն. ինքնիշխան կամօք և փառօք զարդարեալ պսակեցեր զնա, պարգևելով նմա զվայելումն ուրախութեան դրախտին փափկութեան, գործել զնա և պահել, և հանապազ մշտնջենաւորել յանճառ պարգևսն, և յառաջանալ օր ըստ օրէ ի գործս բարիս. և յաւելեր նմա զպատուիրանադրութիւն կենսաբեր հրամանի բարերար կամաց քոց. զի յաւելուածով պատուիրանադրութեան՝ մեծի փառաց և պատուոյ զնա ճոխացուցանէիր. և ի ձեռն բարեյօժար կամացն հնազանդութեան՝ յևս առաւել ի գերակատար կեանսդ զնա փոխէիր յիմանալի կայանս բնակութեան վերինն Երուսաղեմի:

Իսկ նա ի ձեռն օձապատիր չարին խաբէութեան՝ ըզգործի կենացն և զպատճառ բարեացն անձնիշխան յօժարութեամբ ի կողմն բանսարկուին դարձուցեալ, և ինքնայօժար կամօք գործակցեալ խաբէութեան չարին, ի բաց չեղեցաւ ի քումմէ արարչադիր և կենսաբեր պատուիրանադրութենէ. և ի ներքոյ անկեալ չարին հնազանդութեան, նախամեծար առնելով զվրիպական բանս պատրօղ թշնամւոյն՝ քան զքո աստուածադիր օրէնսդրութիւնդ, կնոջն լսելով խրատու, կորոյս զտիրական վեհ իմաստութիւնն՝ ուստի հնազանդեալ գլխոյն առաջնորդական տէրութեան, անհանճարաբար և անխորհրդապէս ի բաց մերկացաւ զբոցանճաճանչ լուսեղէն զարդարանսն: Եւ հակառակաբար հայթայթանօք ջանայր ծածկել զամօթալիր զմերկութիւնն պատառատուն տերևովն՝ անյուսացեալ ի զօրութիւն ամենակալիդ, կարծէր թաքչել յամենատես գիտութենէ աստուածութեան քո՝ պատճառելով զպատճառս մեղաց, եթէ կինս զոր ետուր ինձ՝ սա եղև պատճառ: Վասն որոյ զցաւոց և զանիծից ժառանգեաց զկեանս, ի ներքոյ անկեալ մահու և ապականութեան, ըստ անսուտ և աստուածային հրամանիդ՝ ասելով, եթէ՝ յորում յաւուր ուտիցես մահու մեռանիցիս. որով և թագաւորեալ տիրեաց ի վերայ

Digitized by Google

մեր իշխան մահու, և ղբնութիւնս մեր գրաւեալ ինքեան հնազանդութեամբ պաշտակն կորստեան, և զամենեսեան ծառայս իւր արարեալ, վարեաց ի գործ խիստ ծառայութեան դժոխոց ։

Իսկ դու Հայր բարերար և բազմագութ յառաջ և յամենաբաւ մարդասիրութենէ քումմէ յաղթեալ՝ ոչ հանդուրժեցեր զանարատ ձեռին քո ստեղծուածս յայնպիսի վտանգաւոր աղէտս տարակուսանաց տեսանել. այլ բարեգործեալ հայրախնամ սիրով քո գթացար յորդիս մարդկան, և յայց ելեալ կորուսելոց, առաքեցեր ի խնդիր զմիածին և զէակից Հօր զծոցածին և զանբաժանելի զէական Բանդ Աստուած, որ եկն և էառ զկերպարանս զձձութեան աղքատացեալ բնութեանս մերոյ, ներմարդացեալ ի սուրբ և յանարատ կուսէն Մարիամայ Աստուածածնէն, և յանձն իւր էառ զյանցանս սխալմանս մեղացն Ադամայ. և աստուածախնամ տեսչութեամբ իւրով տնօրինեալ զամենայն կիրս մարդկայինս յանձն իւր բաց ի մեղաց, եղև պտուղ մարդկութեանս։ Հովիւն երկնաւոր եկն և խնդրեաց զոչխարն զկորուսեալ ի վերայ լերինն բարձու, և առեալ եդ ի վերայ կենսաբեր ուսոց իւրոց, դարձուցանելով ի հայրենի բնակութիւնն, ուստի արտաքսեցաւն տարագրութեամբ. և զանիծիցն և զցաւոցն ելոյծ զդատապարտութիւն, իւրով անպատմական և անպարտական մահուամբն։ Եւ զանկեալն ի ձեռս աւազակաց վերստին ողջացոյց պատելով զվէրս նորա, արկանելով ի նա ձէթ և գինի, և աւանդելով ի պանդոկիս ամէնընկալ սուրբ կաթուղիկէ Եկեղեցւոյ. որ ժողովէ զամենայն ցրուեալս և զկեղեքեալս, և միաւորէ յորդեգրութիւն ժառանգութեան Հօրդ երկնաւորի. և հաշտարար և մեղսաքաւիչ իւրով պատարագաւն որ ի վերայ խաչին՝ բոլորապտուղ զինքն քեզ ընծայեցոյց ընդ մեր. և վասն մերոց պարտեացն զանձն իւր փոխանակելով։ Եւ դարձեալ վերստին ստացաւ զմեզ սուրբ արեամբ իւրով, և ազատեաց ի ծառայութենէ բանսարկուին, պատառելով զմուրհակ դատապարտութեան յանցանաց մերոց, որ կայր մեզ հակառակ. եբարձ զայն ի միջոյ և բևեռեաց ընդ խաչափայտին. մերկեաց զիշխանութիւնս և զպետութիւնս մեքենաւոր զօրութեան նորա. յայտ յանդիման խայտառակեալ նշաւակեաց զնա

Digitized by Google

յանձին իւրում զօրութեամբ աստուածութեան իւրոյ։ Եւ իշխանական պետութեամբ իջեալ ի ստորին սանդարամետըս դժոխոց, աղարտելով զզօրութիւն բռնութեան կարծեալ իշխանին աշխարհի, որ բարձրացեալ և լեռնացեալ ամբարտաւանութեամբ ունէր գրաւեալ ընդ իւրեամբ զբնութիւն մարդկութեանս. որով ժամանեալ եհաս թագաւորն ի բարձանց՝ հզօրն ի պատերազմի և ելեալ ի բարձունս հպարտացելոյն, և կապեաց զհսկայն՝ աւերելով զամուրս նորա, և յափշտակեաց զգանձն նորա, և դարձեալ ենոյծ զարքունական պատկերն ի դրախտն՝ ուստի եհան, զեօթնեկին շնորհսն տալով՝ զոր կորոյսն եօթնեակ յանցանօք։ Քանզի շինեաց իմաստութիւնն Հօր զտունն զխորանն Դաւթի, զանկեալն և զկործանեալն վերստին նորոգեաց, վասն լինելոյ նորա ծաղիկ յարմատոյն Յեսսեայ. և հանգեաւ ի նա հոգի սուրբ, որ ի մեզ խորհրդածի. հոգի իմաստութեան և հանճարոյ. և լցեալ եղև հոգւով երկիւղին սրբութեան։ Զի ուր երկիւղ Տեառն է, անդ պատուիրանաց պահպանութիւն. և ուր պատուիրանաց պահպանութիւն, անդ և ոչ ինչ յանցանք։ Քանզի զյանցանս մեր էառ, և զցաւս մեր եբարձ. և զքեզ միայն ծանոյց մեզ հաւաստեաւ Աստուած կենդանեաց և մեռելոց, առնելով խաղաղութիւն արեամբ խաչին իւրոյ որ ինչ յերկինս և որ ինչ յերկրի ի նոյն։ Եւ միջնորդական սուրբ արեամբն իւրով հաշտեցոյց զկամս քաղցրութեան սիրոյ քո առ արարածս։ Քանզի բարձաւ միջնորմն, և լուծաւ կրճիմն, որ կայր խափան և արգել մերոյ փրկութեան. և տեղի տուեալ սրովբէիցն շրջապատեալ բոցեղէն սրոյն, որ պահէր ըզճանապարհս ծառոյն կենաց. վասն զի ընդ մեզ եղաւ ճանապարհ և ճշմարտութիւն և կեանք Յիսուս, որ առաջնորդեաց մեզ ընդ երկնաչու պողոտայն փրկաւէտ կենացն, և անցոյց ի վեր ընդ դրունս երկնից, և նըստոյց զեր ի վերոյ իշխանութեանց և պետութեանց։ Եւ խրախոյս տուեալ հաւատացելոց՝ ասէ. քաջալերեցարուք ես յաղթեցի աշխարհի, և ետու ձեզ իշխանութիւն կոխել զօձս և զկարիճս և զամենայն զօրութիւն թշնամւոյն։ Առ որս և ասել մեզ համարձակապէս. թէ ո՞ւր է մահ յաղթութիւն քո. ո՞ւր է դժոխք խայթոց քո. քա՛նզի եղաք փրկեալք և ազատեալք արեամբ միածնի Որ-

Digitized by Google

դւոյ քո, Յիսուսի Քրիստոսի Տեառն մերոյ, ընդ որում քեզ Հօր և Հոգւոյդ սրբոյ վայելէ փառք։

Խաղաղութիւն ամենեցուն։

Աստուծոյ երկրպագեսցուք։

Եւ արդ Տէր Աստուած մեր բարերար և բազմագութ. որ այսպիսի անճառ և անպատում բարեաց հաղորդս զազգս մարդկան արարեր. որով մեծարեցեր զմեզ ի ձեռն Միածնի քո տնօրէնութեան. որ եկեալ կատարեաց զամենայն գրեալս օրինաց և մարգարէից և քաղցրուսոյց վարդապետութեամբ իւրով ժողովեաց զցրուեալ ազգս մարդկան. և միաւորեալ միացոյց զամենեսեան միաբան սիրով ի մի հաւատս և ի մի յոյս կոչման քում արարչական խնամոց գթութեանցդ. և հորդեաց ճանապարհ փրկութեան ամենայն տիեզերաց, պարգևելով զառհաւատչեայ կենդանութիւն Հոգւոյն սրբոյ նորածնելոց նոր ժողովրդոց որդւոց առագաստի. կազմելով զդեղ և զըպեղանիս ապաշխարութեան՝ իւրով առատ մարդասիրութեամբ, ասելով. եթէ ոչ եկի կոչել զարդարս, այլ զմեղաւորս յապաշխարութիւն. և դարձեալ՝ թէ եկայք առ իս ամենայն աշխատեալք և որք ունիք բեռինս ծանունս մեղաց և ես հանգուցից զձեզ։ Եւ յորդորական աստուածախօս ձայնիւն յորդորեալ քաջալերեաց զամենեսեան ի հնազանդութիւն աստուածային լծոյ ծառայութեան, ասելով. եթէ առէք զլուծ իմ ի ձեզ, և ուսարուք յինէն՝ զի հեզ եմ և խոնարհ սրտիւ, և գտջիք հանգիստ անձանց ձերոց. զի լուծ իմ քաղցր է և բեռն իմ թեթև։

Եւ արդ մեք ծառայքս քո ժողովուրդ և խաշն արօտի քո՝ գինք արեան միածնի Որդւոյ քո՝ ժողովեալք ի գաւիթ սուրբ եկեղեցւոյ քո, և խոնարհեալ աղաչեմք ըզբազմագութ և զառատ մարդասիրութիւնդ, և հայցեմք ի քաղցրութենէ քումմէ զքաւութիւն և զթողութիւն մեղաց մերոց։ Խոնարհեցո Տէր զունկն քո և լուր աղաչանաց ծառայից քոց. և ողորմութեամբ քով թող մեզ զյանցանս մեր զկամայն և զակամայ. և արա զմեզ որդիս լուսոյ և որդիս տուընջեան, զորս գրեցեր ի գիրըս որդեգրութեան ժառանգութեան սրբոցն ի լոյս. որ չարին պատրանօք որսացեալ եղաք կամօք մերովք ի մեղսասէր և ի կամակոր նորա կամսն, որոշելով ի հայ-

Digitized by Google

բախնամ արարչական գթոց քոց, տարագիր առնելով զանձինս մեր յորդեգրութենէ ժառանգութեան Հօրդ երկնաւորի. և ոչ պահեցաք զգուշութեամբ զստացուածս և զգանձս հոգևոր մեծութեանն, զոր սուրբ աւազանաւն առաք զմաքրութիւն, և զանմեղութիւն և զարդարութիւն, և զհոգևոր մեծաշահ փարթամութիւն: Այլ անառակ վարուք մերովք ծախեցաք զհայրենատուր մեծութիւնն, մինչև ժամանեաց ի վերայ մեր յետին աղքատութիւնն, և սովամահ չքաւորութեամբ նուաղեցան անձինք մեր: Եւ յոյս ակնկալութեան մերոյ չիք ոք բաց ի քէն Տէր, զի դու ես Աստուած մեր, և զանուն քո անուանեմք զօրհանապազ: Հայր երկնաւոր, հայեաց ի դարձումն ծառայից քոց, և ընկալ զզղջումն խոստովանութեան մերոյ, որպէս զանառակ որդւոյն ընկալար զդարձումն, և վերստին զարդարեցեր զնա արփիազարդ և լուսեղէն զգեստիւն, և առաջին պատմուճանին ծածկութիւ, զոր ինքեան կամակոր և անառակ վարուքն մերկացաւ: Վասն որոյ և մեք նորին յօժարութեամբ զղջացեալ սրտիւ և բեկեալ անձամբ դառնամք առ քո բարեգթութիւնդ, ասելով. Հայր մեղաք յերկինս և առաջի քո, ոչ ևս եմք արժանի կոչիլ որդի սուրբ անուանդ քո: Արա զմեզ իբրև զմի ի վարձկանաց քոց: Անխայեա Տէր ողորմութեամբ և քաղցրութեամբ կամօք քովք. և հայրական գթով սիրոյ բարերարութեան քո եկ ընդ առաջ մեր. և զգեցո մեզ զառաջին պատմուճանին զլուսափայլ վերարկուն, զոր զգեստաւորեալ զարդարեցաք աւազանին լուսափայլ պայծառութեամբն: Մերկեա ի մէնջ զհնացեալ պատմուճան չարին ծածկութեանց, զոր ծուլութեամբ և անառակ վարուք մերովք զգեցաք, և օտարացաք ի հայրական խնամոց քոց: Տուր մեզ Տէր Աստուած մեր զքո զուրախական և զմարդասիրական զհամբոյրդ, տալով զկնիք սրբութեան ի հոգիս մեր. և զմատանին արդարութեան տպաւորեա յաջոյ ձեռին մերում, միշտ ունելով մեզ զնշան և զդրօշմըն ուխտին սրբութեան, զոր ուխտեցաք միջնորդութեամբ արեան Որդւոյ քո սիրելւոյ: Արբո մեզ զբաժակըն ուրախարար, զոր խառնեցեր ի խառնարան սրբութեան աստուածընկալ սեղանոյ քառաթև խաչին, յորում զենար զզենումն ճշմարիտ պատարագին եզինն պարա-

Digitized by Google

րակի, և հրաւիրեցեր ի պատրաստեալ ճաշն հարսա֊
նեաց միածնի Որդւոյ քո սիրելւոյ, զպակասամիտսն ի
հանճարոյ՝ աստուածային երկիւղին և պատուիրանին ըղ֊
ձուչութեան, և անզգամացն պատուիրեցեր թողուլ զան֊
զգամութեան ճանապարհն :

Եւ արդ տուր մեզ զհացն սրբութեան մարմնոյ միա֊
ծնի քո, որով կեցցուք. և արբո զմեզ գինւով անուշու֊
թեան ուրախութեամբ սուրբ բաժակին. զի արբեալ
միշտ ուրախասցուք յանապառ ուրախութիւնդ. և վայե֊
լեսցուք յանկապուտ ճոխութիւնդ, յերջանիկ յօթևանս
Հօրդ երկնաւորի. զոր պատրաստեցեր ի սկզբանէ աշ֊
խարհի սրբոց քոց. և ընդ նոսին գոհանալով փառաւո֊
րեսցուք զՀայր և զՈրդի և զսուրբ Հոգիդ, այժմ և
միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն :

Ձնէ ողորմեցն ոէն ՍԱՂՄՈՍ ԺԺԷ. է նխ.

ԿԸ. Բացէք ինձ զդրունս արդարութեան, զի մտից
ընդ այն՝ և խոստովան եղէց Տեառն :

Փխ. Խոստովան եղերուք Տեառն, զի բարի է : 331 :

Աղմ ՍԱՂՄՈՍ ՂԹ. է նխ.

Աղաղակեցէք առ Տէր ամենայն երկիր, ծառայեցէք
Տեառն ուրախութեամբ :

Մտէք առաջի նորա ցնծութեամբ, ծաներուք զի նա
է Տէր Աստուած մեր :

Նա արար զմեզ և ոչ մեք էաք, մեք ժողովուրդք
և խաշն արօտի նորա :

Մտէք ընդ դրունս նորա խոստովանութեամբ, և օրհ֊
նութեամբ ի յարկս նորա :

Խոստովան եղերուք Տեառն, և օրհնեցէք զանուն
նորա :

Քաղցր է Տէր, յաւիտեան է ողորմութիւն նորա.
ազգէ մինչև յազգ է ճշմարտութիւն նորա :

Ձնէ Քոր. Սուրբ եկեղեցեաւս: Աղ. Ի մէջ տաճարիս:

Ես կոչեցայ եկեղեցական կամ առաջնորդեցն զայս օրհնութիւն :

Օրհնեալ է ամենասուրբ Երրորդութիւնն ի բարձունս
Հայր և Որդի և սուրբ Հոգին. մեծ գոհութիւն երից
անձանց, և մի աստուածութեան անսահմանելւոյ, ան֊
փոփոխելւոյ, ամենակարողի, անմահի, ամենակեցուցա֊

Digitized by Google

նողի, ամենապարզևի, անճառի, պատիւ երկրպագութիւն և մշտնջենաւոր փառաբանութիւն յերկնաւորաց և յերկրաւորաց, ի հրեշտակաց և ի մարդկանէ, ի սրովբէից և ի քերովբէից, ի տէրութեանց և յիշխանութեանց. Երրորդութեան երրեակ և մի աստուածութեան, որ էնն յէութեան յիսկութեան համագոյական աստուածութեանըն՝ հարթ և հաւասար ի խորութիւն և ի բարձրութիւն՝ ի լայնութիւն և յերկայնութիւն: Որ իւրով կանխագէտ զօրութեամբն արար զերկինս և զերկիր. ձգեաց զերկիրըս առանց հիման խորանաձև հաստատութեամբն, և արկ ի վերայ նորա զբազմութիւն ջուրց. գնան հրեղէնքըն ընդ ջուրն և ոչ շիջանին., զի նմա ամենայն ինչ կարելի է. սահմանեաց զծով աւազով. բուսոյց յերկրէ զծառս և զծաղիկս՝ հանդերձ սերմանեօք. պաճուճեաց չորիւք եղանակօք զբոլոր շրջանս տարւոյն. եդ զնոսա հակառակ անհաշտելի՝ և ի սէր անքակտելի. արար ազգի ազգի զեռունս ի ծովու, և զթռչունս թևաւորս, և բազում գազանս վայրենիս: Ապա յետ ամենեցուն արար զմարդն ձեռօք իւրովք ըստ պատկերի իւրում, և փչեաց ի նա շունչ կենդանի, և եղև մարդն ի հոգի կենդանի. և զամենայն ինչ հնազանդ արար ի ներքոյ ոտից նորա, և կացոյց միջասահման՝ կենաց և մահու. և ետ նմա պատուէր չճաշակել ի պտղոյ ծառոյն գիտութեան, և ի պահել պատուիրանին խոստացաւ նմա զվերնայարկ վերինն Երուսաղեմի: Իսկ բանսարկուն գործի իւրոյ չարութեան գտեալ զօձն, և նովաւ խօսեցաւ ընդ կնոջն՝ ի պատճառս աստուածանալոյն, ետ նմա ուտել ի ծառոյն գիտութեան. և մերկացաւ ի լուսեղէն փառացն: Իսկ բարերարին քաղցրաձայնեալ ասէ. ո՞ւր ես Ադամ. և ի գալ նորա ի դրախտն, նկարեցաւ գալուստն Միածին Բանին իւրոյ յաշխարհս. և ձայն ոտից նորա՝ դրօշմեալ զՅովհաննէս Մկրտիչ. իսկ Ադամայ անզղջութեամբ դիմեալ ի մահ՝ զանպարտականն Աստուած պատճառս իւրոյ կորստեանն համարեալ՝ ասէր թէ կինս զոր ետուր ցիս՝ սա յանցոյց զիս: Իսկ դատաւորն արդարութեան անէծ զնոսա՝ և զմիաստակարս նոցա, և եհան զնոսա արտաքոյ դրախտին. սակայն ոչ ժուժկալեալ ողորմութեամբն՝ ընկալաւ զպատարագն Աբելի, անմահացոյց զզաւակ նորա զԵնովք, պահեաց զՆոյ ի տապանին բազմահոյլ կենդա-

Digitized by Google

նեօք, և զամբարշտեալն կայէն իւրովք ծննդովքն սա-
հանաբաց անձրևօք ընջեաց։ Օրհնելով զտասներորդն
զԱբրահամ՝ խոստանալով նմա երդմամբ, բազմացուցա-
նել զզաւակ նորա իբրև զաստեղս երկնից։ Բազում նը-
շանօք և արուեստիւք խօսեցաւ առ հարսն մեր՝ տա-
քելով զմարգարէսն քարոզիչս։ Իսկ իբրև եկն լրումն
ժամանակին, խօսեցաւ ընդ մեզ Որդւովն, որ եկն և
մարմնացաւ ի սրբոյ կուսէն, և եմուտ ընդ օրինօք, զի
զորս ընդ օրինօքն իցեն՝ ազատեսցէ. կատարեաց զօրէ-
նըս, ելից զտառս մարգարէիցն. արար նշանս և ա-
րուեստս. լուսաւորեաց զկոյրս. առողջացոյց զանդամա-
լոյծս. հալածեաց զդևս։ Ապա ի կատարումն նշանացն՝
շնորհեաց զյարութիւն Ղազարու՝ չորեքօրեայ կոչմամբ
ի Թաղմանէ։ Նստաւ ի վերայ յաւանակի իշոյ, որ է
խորհուրդ կոչման հրէից և հեթանոսաց. վասն որոյ և
մանկտին ավաննա երգէին, օրհնութիւն որդւոյ Դաւթի։
Իսկ ի սերկեան աւուրս՝ գայ կամաւորութեամբ ի չարչա-
րանս. յանձն առնու մատնիլ յանօրէն աշակերտէն։ Յերե-
կոյ հասեալ ժամուն՝ զերկոտասանիցն լուանայ զոտս՝
զխոնարհութիւն ուսուցանելով նոցա, նա և զՅուդային
յառաջ լուանայր. որ և աշխատեցաւ մինչև ցգաւիթ
քահանայապետին. վասն որոյ և Յուդա ի միտս իւր ա-
սէր՝ թէ բիւր անգամ մեծարես զիս, ոչ եմ մոռանալոց
զերեսուն արծաթին։ Արդ ի յայսմ ահաւոր և սքանչելա-
գործ տօնիս՝ եղև ուրախութիւն հրեշտակաց և մարդ-
կան։ Այսօր բարձաւ ցանկ անիծիցն Ադամայ։ Այսօր
ազատեցաք ի ծառայութենէ սատանայի։ Այսօր արա-
րիչն արարածոց ի յերկրի երևեցաւ։ Այսօր Աստուածն
սերովբէից ծառայի զգենու զկերպարանս։ Այսօր ան-
հասն քերովբէից՝ խոնարհի և լուանայ զոտս աշակերտա-
ցըն։ Այսօր արկօղն զլոյս որպէս զօթոց՝ զգենու ղեն-
ջակ։ Այսօր աթոռակիցն Հօր՝ ընդ հողեղէնս բազմի։
Այսօր փառակիցն սուրբ Հոգւոյն՝ յանձն առնու մատնիլ
ի դատաստան մահու։ Այսօր կենագործօղն ամենեցուն՝
ընդ մահուամբ սահմանի։ Այսօր վէմն առանց ձեռին
հատեալ՝ ՝և ինքն լեռնացեալ ելից զտիեզերս։ Այսօր
բաշխէ զմարմին և զարիւնն՝ և յայտնէ զանօրէն աշա-
կերտին զխորհուրդն։ Այսօր կապեալ լինի արձակիչն
կապելոց, զոր երկինք ոչ բաւէին տանել։ Այսօր օրհ-

նէ զառաքեալսն ի դպրութիւն քահանայութեան ։ Այսօր գտանի դրամն կորուսեալ, որ է թագաւորական պատկերն ։ Այսօր եղև ուրախութիւն հրեշտակաց վասն գիւտի մոլորեալ ոչխարին ։ Այսօր ճշմարտապէս հաղորդեցաք մարմնոյ և արեան Տեառն ։ Այսօր օրհնեցան քահանայապետք ամենայն հանդերձ քահանայիւք ։ Այսօր լուսազարդեցան թագաւորք հանդերձ ամենայն զօրութեամբն իւրեանց և իշխանութեամբ՝ ընդ Դաւթի և ընդ դասագլուխս Նորա ։ Այսօր օրհնեցան ծերք և տղայք, երիտասարդք և կուսանք ի ձեռն կապողին և արձակողին ։ Այսօր դրախտն բանի մարդկութեանս՝ և ամենայն արարածք ցնծան յանմահական կեանս ։ Այսօր ի հին տրտմութեանց փոխեցաք, և ամենեքեան նորոգեցաք ի Քրիստոս ։ Այսօր ետ իշխանութիւն կոխել զօձս և զկարիճս՝ և զամենայն զօրութիւնս թշնամւոյն ։ Այսօր ի ձեռն աւազանին լուսազարդեալք մաքրեցան հաւատացեալք յաղտոյ մեղաց ։ Արդ եկեսցէ մխիթարութիւնն Երուսաղեմի ի վերայ ձեր, որ ասէ. մխիթարեցէք, մխիթարեցէք զժողովուրդ իմ, ասէ Աստուած. քահանայքդ խօսեցարուք ի սիրտ Երուսաղեմի. մխիթարեցէք զդա, զի լի եղև տառապանօք. թողեալ լիցին նմա մեղք իւր ։ Դարձեալ՝ եթէ զճանապարհս սրտի նորա տեսի և բժշկեցի, և ետու նմա մխիթարութիւն, և փոխանակ մոխրոյն՝ օծումն ուրախութեան ։

Արդ բարեգութն Աստուած ուրախացուսցէ զձեզ զամենեսեան, և երկնաւոր պարգևացն արժանի արասցէ ։ Օրհնեսցէ Տէր Աստուած զհայրապետս. ընդ սրբոյն Գրիգորի և ընդ այլ սրբոց հայրապետացն մասնակիցս արասցէ ։ Օրհնեսցէ Տէր Աստուած զքահանայս ընդ քահանայութեան Մելքիսեդեկի, և զարդարեսցէ ըստ տեսլեանն Մովսեսի ի զարդ անկողոպտելի, ըստ պատմուճանին Ահարոնի. և հոգիազարդեսցէ ըստ առաքելոցն խորանակցութեան. և արասցէ մշակս առանց ամօթոյ, զի յերևել հօտապետին՝ ընդունիցիք զանթառամ փառաց պսակն ։ Օրհնեսցէ Տէր Աստուած զմիաբան ժողովուրդս, և թեթևացուսցէ զբեռինս մեղաց ձերոց ։ Օրհնեսցէ Տէր Աստուած զտունս զայս և զբնակութիւնս և զհիմունս եկեղեցւոյս՝ ըստ այնմ որ ասէ. այսօր եղև փրկութիւն տանս այսորիկ՝ ըստ աւետեացն Աբրահամու

Digitized by Google

հանդերձ ազգաւ և ժառանգակցօք իւրովք։ Օրհնեսցէ Տէր Աստուած զպատուարս տանս այսորիկ, զլուսարարըս, զդռնաբացս, և անթառամ պսակացն արժանի արասցէ։ Օրհնեսցէ Տէր Աստուած զխոստովանօղսդ և զապաշխարօղսդ. և թողցէ զյանցանս ձեր՝ որպէս ըզպոռնկին և զմաքսաւորին։ Օրհնեսցէ Տէր Աստուած ըզծերսն խորայերան բանակին. և որպէս զծերունին Սիմէոնին՝ որ զԱստուածորդին ի գիրկս իւր ընկալաւ, և հայցէր արձակիլ ի խաղաղութիւն։ Օրհնեսցէ Տէր Աստուած զտղայս ձեր՝ որպէս զտղայս Եբրայեցւոց՝ որք առին ոստս արմաւենեաց և ելին ընդ առաջ Նորա աղաղակէին և ասէին՝ ովսաննա օրհնեալ որ գաս յանուն Տեառն։ Օրհնեսցէ Տէր Աստուած զերիտասարդս՝ որպէս զերանելին Յովսէփ, որ հաճոյ եղև Աստուծոյ և օրհնեցաւ ի Նմանէ։ Օրհնեսցէ Տէր Աստուած զկանայս՝ որպէս զկանայս իւղաբերս՝ որ եկին ի գերեզման Փրկչին և լուան աւետեօք սուրբ յարութեան Տեառն։ Օրհնեսցէ Տէր Աստուած զժամակոչ քաղաքիս մերոյ, զի որպէս ձայն հրեշտակապետի յաղթօղ է առ ի զարթուցանել զննջեցեալս ի մահահանգիստ քնոյ, նոյնպէս և ձայն սորա յաղթօղ է առ ի հալածել զլեգէոնն ամենայն զօրօք իւրովք։ Օրհնեսցէ Տէր Աստուած զվերակացու տանըս, զմշակս և զեզինս, զխաշինս և զհօտս սորա։ Օրհնեսցէ Տէր Աստուած զանդաստանս մեր՝ և բուսուսցէ զամենայն բոյս շահեկանութեան. ի բաց արասցէ զամենայն փուշ և զբիծ, զհրայրեաց և զդալուկ, զժանտ, զկարկուտ, զմարախ, զջորեակ, զաւռն եղեռնածին և զամենայն ցաւս և զխաշնամահ ի մարդոյ և յանասնոյ. և հալածեսցէ զլեգէոնն ամենայն զօրօքն իւրովք և առաքեսցէ յանդունդս, և զհրեշտակ խաղաղութեան առաքեսցէ և օրհնեսցէ զամենեսեան։ Օրհնեսցէ Տէր Աստուած զամենեսեան զմիաբան զարսդ և զկանայսդ, ըզծերսդ և զտղայսդ, և փրկեսցէ զձեզ յամենայն չարեաց, և ամրացուսցէ ընդ հովանեաւ աջոյն իւրոյ, և երկնից արքայութեան արժանիս արասցէ։ Օրհնեսցէ Տէր Աստուած զընակութիւն քաղաքիս մերոյ, և հալածեսցէ զամենայն չար և զզօրութիւն բռնացեալ թշնամւոյն։ Օրհնեսցէ Տէր Աստուած զկրօնաւորսդ, ընդ սրբոյն Եղիայի և ընդ Անտոնի ժառանգակիցս և մասնակիցս ա-

բռացէ։ Օրհնեսցէ Տէր Աստուած զժողովուրդս սուրբ եկեղեցւոյս մերոյ առ հասարակ զարս և զկանայս, զերիտասարդս, և երևեցուսցէ զերեսս իւր ի ձեզ։ Օրհնեսցէ Տէր Աստուած զխոստովանօղսդ և արժանի արասցէ զձեզ լուացման սուրբ առաքելոցն ի վերնատանն։ Եւ փոխանակ սրբապաշտութեան ձերոյ՝ զերկնայինն պարգեւեսցէ ձեզ կերակուր։ Եւ փոխանակ ժուժկալութեան ձերոյ զոր ծարաւեցայք, յանմահական աղբերէն տացէ ձեզ ըմպել ջուր։ Եւ փոխանակ գիշերային տքնութեան ձերոյ՝ ընդ հրեշտակս դասեսցէ զձեզ։ Եւ փոխանակ լռակեցութեան ձերոյ՝ անթառամ պսակօք զարդարեսցէ զձեզ։ Եւ փոխանակ ողորմութեան ձերոյ որ առ աղքատըս, յաջակողման բազմեցուսցէ։

Արդ՝ ով աստուածասէր ժողովուրդք և հաւատացեալք Քրիստոսի, պահեցէք զպատուիրանս Տեառն և զիրաւունըս Նորա, և մի՛ դադարիք և ձանձրանայք առնել ողորմութիւն. մինչդեռ ժամանակս ի ձեռս է՝ գործեցէք ըզբարիս, զի զփոխարէնն ի Փրկչէն մերմէ Յիսուսէ Քրիստոսէ զյաւիտենական կեանսն առնուցուք։ Արդ հատուցանօղն բարեաց ամենեցուն տացէ եկեղեցեացս շինութիւն, քահանայից ուղղափառութիւն, թագաւորաց և իշխանաց վայելչութիւն, ծերոց մխիթարութիւն, կրօնաւորաց ժուժկալութիւն, երիտասարդաց ողջախոհութիւն, մեղաց լուծումն, հիւանդաց բժշկութիւն, դիւաց խորտակումն, ախտաժետաց առողջութիւն, և փըրկութիւն հոգւոց և մարմնոց։ Եւ արդ լսելով զայս, ի բաց ընկեցէք յանձանց ձերոց զչարութիւն և զամենայն խարդախութիւն, թողէք իւրաքանչիւր եղբօր իւրում զյանցանս, և զամենայն խէթ զոր ունիք ընդ միմեանս և զամենայն չարութիւն. գործք բարիք բոլորովիմբ ի կատարումն. սիրեցէք զՏէր յամենայն սրտէ, և զկամս Նորա կատարեցէք. ընդ ամենայն մարդոյ զխաղաղութիւն ունիցիք. հեզ լիջիք և խոնարհ, լսել ձայնին որ ասէ, յո՞ բնակեցայց եթէ ոչ ի հեզս և ի խոնարհս և որք դողան ի բանից իմոց. խնդրեցէք զխաղաղութիւն և երթիջիք զհետ արդարութեան. յուսոյ ակն կալջիք յաւիտենանց յաւիտենից։ Եւ Տէր Աստուած արարիչն ամենայնի՝ հաստատեսցէ զձեզ, և տացէ առատաբոյս բարիս աստ և ի հանդերձելումն, և արժանի արասցէ զձեզ

Digitized by Google

դասիլ յաջակողմանն, և ննջեցելոց ծանօթից և անծանօթից զերկնից արքայութիւնն պարգևեսցէ. և Քրիստոսի Աստուծոյ մերոյ փառք յաւիտեանս. ամէն:

Ձկնի Քար. Խնդր: Եւ ասեն. Լ. Տէր ողորմ. Աղ. Քում ամենազօր և հրաշալի տէրութ: Եւ դնէ խաչն և աւետարան առաջի բեմին և համբուրեն զայնս և զաջ ժողովրդեանն, և փոխեն ընծայս. և օրհնէ ժողովուրդն զապաշխարողն և արձակէն համբուրելով զխաչն:

---

## ՑԵՐԵԿՈՅԻՆ

Ցերեկոյն ժամն առեն զՃաշու մատուցեալ ողորմեալսն, և նշխար բաշխէ և մտանեն յեկեղեցին և սկսանին. Խոնարհեցո և Ապրեցո:

### ՄԵՍԵԴԻ

Լուացայց սրբութեամբ զձեռս իմ. և շուրջ եղէց զսեղանով քո Տէր:

Տէր սիրեցի զվայելչութիւն տան քո. և զտեղի յարկի փառաց քոց:

ԸՆԹԵՐՑՈՒԱԾ Ի ԾՆՆԴՈՑ: ԻԲ. 1:

Եւ եղև յետ բանիցս այսոցիկ՝ փորձեաց Աստուած զԱբրահամ՝ և ասէ ցնա. Աբրահամ Աբրահամ: Եւ նա ասէ. աւասիկ եմ: Եւ ասէ ցնա. առ դու զորդիդ քո սիրելի զոր սիրեցեր՝ զԻսահակ, և գնա դու յերկիր բարձր, և հանցես զդա անդ յողջակէզ ի վերայ միոյ լերանց յորոց ասացից քեզ: Եւ յարեաւ Աբրահամ ընդ առաւօտն, համետեաց զէշ իւր, և առ ընդ իւր երկուս ծառայս, և զԻսահակ զորդի իւր. և պատառեաց փայտ յողջակէզ, և յարեաւ գնաց. և եկն ի տեղին զոր ասաց նմա Աստուած: Եւ յաւուրն երրորդի համբարձ Աբրահամ զաչս իւր և ետես զտեղին ի հեռաստանէ: Եւ ասէ Աբրահամ ցպատանիս իւր. Նստարուք դուք այդր հանդերձ իշովդ, և ես և պատանեակդ երթիցուք մինչև ցանդր, և երկիր պագցուք և դարձցուք առ ձեզ: Եւ առ Աբրահամ զփայտ ողջակիզին, և եդ ի վերայ Իսահակայ որդւոյ իւրոյ. և առ ի ձեռն զհուրն և զսուր. և գնացին երկոքեան ի միասին: Եւ ասէ Իսահակ ցԱբրահամ հայր իւր. հայր: Եւ նա ասէ. զի՞ է որդեակ: Եւ նա ասէ. ահա հուր և ահա փայտ, ո՞ւր է ոչխար յողջակէզ: Եւ նա ասէ. Աստուած տեսցէ իւր ոչխար յողջակէզ որդեակ: Գնացին երկոքեան ի միասին, և եկին ի տեղին

զոր ասաց նմա Աստուած։ Անդ շինեաց սեղան Աբրահամ և եդ ի վերայ զփայտն. և կապեաց զԻսահակ զորդի իւր, և եդ զնա ի սեղանն ի վերայ փայտին։ Եւ ձգեաց Աբրահամ զձեռն՝ առնուլ զսուրն և զենուլ զորդին իւր։ Եւ կոչեաց զնա հրեշտակ Տեառն յերկնից և ասէ. Աբրահամ Աբրահամ։ Եւ նա ասէ ցնա. աւասիկ եմ։ Եւ ասէ. մի՛ մխեր զձեռն քո ի պատանեակդ, և մի՛ ինչ առնէր զմա. զի այժմ գիտացի թէ երկիւղած ես դու յԱստուծոյ, և ոչ խնայեցեր յորդիդ քո սիրելի վասն իմ։ Համբարձ Աբրահամ զաչս իւր և ետես, և ահա խոյ մի կախեալ կայր զծառոյն Սաբեկայ զեղջերաց. և գնաց Աբրահամ և ա՛ռ զխոյն. և եհան զնա յողջակէզ փոխանակ Իսահակայ որդւոյ իւրոյ։ Եւ կոչեաց Աբրահամ զանուն տեղւոյն այնորիկ՝ Տէր ետես. զի ասիցեն ցայսօր ի լերինն յայնմիկ Տէր երևեցաւ։ Եւ կոչեաց հրեշտակ Տեառն զԱբրահամ երկիցս անգամ յերկնից և ասէ. յանձն իմ երդուայ, ասէ Տէր, փոխանակ զի արարեր դու ըզբանդ զայդ, և ոչ խնայեցեր յորդիդ քո սիրելի վասն իմ. այո օրհնելով օրհնեցից զքեզ, և բազմացուցանելով բազմացուցից զզաւակ քո իբրև զաստեղս երկնից բազմութեամբ, և իբրև զաւազ առ ափն ծովու. և ժառանգեսցէ զաւակ քո զքաղաքս հակառակորդաց իւրոց. և օրհնեսցին ի զաւակի քում ամենայն ազգք երկրի. փոխանակ զի լուար ձայնի իմում։ 18։

Ընթերցուած յԵսայեայ մարգարէէ։ ԿԱ. 1։

Հոգի Տեառն ի վերայ իմ, վասն որոյ և օծ իսկ զիս. աւետարանել աղքատաց առաքեաց զիս, բժշկել զբեկեալս սրտիւք, քարոզել գերեաց զթողութիւն և կուրաց տեսանել. կոչել ամ Տեառն ընդունելի և օր հատուցման Աստուծոյ մերոյ. մխիթարել զամենայն սգաւորս, տալ սգաւորաց Սիոնի փառս. փոխանակ մոխրոյն՝ օծումն ուրախութեան, և սգաւորացն հանդերձ փառաց՝ փոխանակ ոգւոցն վհատութեան։ Եւ կոչեսցին նոքա ազգք արդարութեան՝ տունկ Տեառն ի փառս, և շինեսցեն զաւերակսն յաւիտենից, և զյառաջագոյն աւերեալսն կանգնեսցեն, և նորոգեսցեն զքաղաքս աւերեալս ազգաց մինչև յազգս։ Եւ եկեսցեն օտարածինք հովիւք խաշանց քոց, և այլազգիք մաճակալք և այգեգործք քո։

Digitized by Google

Բայց դուք՝ քահանայք Տեառն կոչեսջիք, պաշտօնեայք Աստուծոյ մերոյ անուանեսջիք, զզօրութիւն ազգաց կերիջիք, և մեծութեամբ նոցա սքանչելի լինիջիք։ Փոխանակ ամօթոյ ձերոյ՝ կրկին ուրախութիւն, և փոխանակ անարգանաց ձերոց՝ ցնծութիւն, և այս զերկիրն յերկրորդում ժառանգեսցեն, և ուրախութիւն յաւիտենից ի վերայ գլխոց նոցա։ 7։

Ընթերցուած ի Գործոց առաքելոց: Ա. 15:

Եւ յաւուրսն յայնոսիկ յարուցեալ Պետրոս ի մէջ եղբարցն ասէ. և էր անդ բազմութիւն անուանց իբրև հարիւր և քսանից. արք եղբարք, պարտ էր կատարել գրոյն, զոր յառաջագոյն ասաց Հոգին սուրբ ի բերանոյ Դաւթի վասն Յուդայի՝ որ եղև առաջնորդ ունելեացն Յիսուսի. զի ի թիւ մեր էր ընդ մեզ, և հասեալ էր նմա վիճակ պաշտամանս այսորիկ։ Սա ստացաւ գեօղ ի վարձուց անիրաւութեան, և ուռուցեալ հերձաւ ընդ մէջ և հեղաւ ամենայն փոր նորա. և յայտնի եղև ամենեցուն որ բնակեալ են յԵրուսաղէմ. մինչև կոչել գեօղջն այնմիկ բարբառովն իւրեանց Ակեղդամայ, այսինքն է՝ գեօղ արեան։ Զի գրեալ է ի գիրս սաղմոսաց. եղիցի բնակութիւն նորա աւերակ. և մի՛ ոք իցէ որ բնակիցէ ի նմա. և զկարգ նորա առցէ այլ։ Արդ պարտ է յարանցս յայսցանէ եկելոցս ընդ մեզ յամենայն ժամանակի, յորում մուտ և ել առ մեզ Տէր Յիսուս, սկսեալ ի մկրտութենէն Յովհաննու մինչև յօրն՝ յորում վերացաւ ի մէնջ, վկայ յարութեան նորա ընդ մեզ լինել միում ի սոցանէ։ Եւ կացուցին երկուս. զՅովսէփ՝ որում Բարսաբայն կոչէին, որ անուանեցաւ Յուստոս, և զՄատաթիա։ Եւ կացեալ յաղօթս՝ ասեն. դու Տէր, սրտագէտ ամենայնի, յայտնեա զմի ոք զոր ընտրեցեր ի սոցանէ յերկոցունց, առնուլ զվիճակ պաշտամանս այսորիկ և առաքելութեան, յորմէ անկաւ Յուդաս գնալ ի տեղի իւր։ Եւ ետուն վիճակս նոցա, և ելանէր վիճակն Մատաթեայ. և համարեցաւ ընդ մետասան առաքեալսն։ 26։

Աղօ ՍԱՂՄՈՍ ԾԴ. տաղերգէ Յոյնն։

ԿՑ. Կակուղ էին բանք նոցա քան զձէթ, և ինքեանք որպէս սլաք։

ՓԽ. Ունկն դիր Աստուած աղօթից իմոց, և մի՛ անտես առներ զխնդրուածս իմ։

Digitized by Google

Նայեաց առ իս և լուր ինձ, զի տրտմեցայ ես ի հանձրանալ իմում և խռովեցայ։

Ի ձայնէ թշնամւոյն և ի նեղել մեղաւորին՝ խոտորեցան յիս անիրաւութեամբ, բարկութեամբ, ոխս պահէին ինձ։

Սիրտ իմ խռովեցաւ յիս, և երկիւղ մահու անկաւ ի վերայ իմ։

Ահ և դողումն եկն ի վերայ իմ, և ծածկեաց զիս խաւար։

Ասէի՝ տայր ոք ինձ թևս որպէս աղաւնոյ, զի թռուչէի վերանայի, հեռացեալ դադարէի յանապատի։

Ակն ունէի Աստուծոյ որ փրկէր զիս ի կարճմտութենէ զայրանալոյ, ի մրրկեալ նեղութենէ։

Ընկղմ Տէր և բաժանեա զլեզուս նոցա, զի տեսի զանօրէնութիւն և զհակառակութիւն ի քաղաքի։

Ի տուէ և ի գիշերի շուրջ եղեն զպարսպօք նորա անօրէնութիւնք, չարիք և մեղք են ի մէջ նոցա. և ոչ պակասեաց ի հրապարակաց նոցա վաշխ և նենգութիւն։

Զի թէ թշնամւոյն նախատեալ էր՝ համբերէի արդեօք, կամ ատելւոյն մեծաբանեալ էր ի վերայ իմ՝ թաքչէի արդեօք ի նմանէ։

Իսկ դու մարդ հաւասար իմ, առաջնորդ իմ և ծանօթ իմ։

Ապաքէն ի նոյն քաղցրացուցեր ինձ և քեզ կերակուր, զի գնայաք միաբանութեամբ ի տան Աստուծոյ։

Եկեսցէ մահ ի վերայ նոցա, և կենդանւոյն իջցեն ի դժոխս. զի չարութիւն է ի բնակութեան նոցա և ի մէջ նոցա։

Ես առ Աստուած կարդացի, և Տէր լուաւ ինձ յերեկոյս՝ ի վաղորդայն և ի հասարակ աւուր։

Պատմեցի և ասացի, և լուիցէ ձայնի իմում. փրկեսցէ խաղաղութեամբ զանձն իմ ի մերձաւորաց իմոց, զի կարեաք հասին ի վերայ իմ։

Լուիցէ Աստուած և խոնարհ արասցէ զնոսա, որ յառաջն է քան զյաւիտեանս։

Զի ոչ գոյր նոցա փոխանակ, և ոչ երկեան յԱստուծոյ։

Ձգեաց զձեռն իւր ի հատուցանել նոցա, և նոքա պղծեցին զօրէնս նորա։

Բաժանեցան ի սրտմտութենէ երեսաց նորա, և եհաս ի սիրտս նոցա։

Կակուղ էին բանք նոցա քան զձէթ, և ինքեանք որպէս սլաք։

Digitized by Google

Ընկեա ի Տէր զհոգս քո՝ և նա կերակրէ զքեզ, և ոչ տայ յաւիտեան սասանութիւն արդարոյ։

Դու Աստուած իջուսցես զնոսա ի գուբ ապականութեան, արք արիւնահեղք և նենգաւորք մի՛ հասարակեսցեն զաւուրս իւրեանց. այլ ես ի քեզ Տէր յուսացայ։

Աղ․ Ուղիղ եղիցին աղօթք իմ. Որպէս խունկ առաջի քո տէր։

Զերեկոյի աղօթս մեր ընկալ Տէր. Եւ զտարածումն ձեռաց մերոց։

Քարոզ Աղաչեսցուք։

ՀԲ. ԱԿ. Այսօր կանգնեցաւ։ 393։ Քար. Վասն խաղ. Աղ. Հայր գթած։ Եւ ասի պատարագին ՍՂ. ԻԲ. ԿՑ. Պատրաստ։ Փխ. Տէր հով։ Առաք. Ա. Կոր. ԺԱ. 23. Զի ես ընկ։

Զկնի պատարագին ՍԱՂՄՈՍ ԻԲ. ողջոյն։

ԿՑ. Պատրաստ արարեր առաջի իմ սեղան, ակն յանդիման նեղչաց իմոց։

Փխ. Տէր հովուեսցէ զիս, և ինձ ինչ ոչ։ 815։

Զկնի Օրթի

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մարկոսի։ ԺԴ. 1։

ԶՏէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ էր զատիկն և բաղարջակերք յետ երկուց աւուրց. խնդրէին քահանայապետքն և դպիրք՝ եթէ զիարդ զնա նենգաւ կալեալ սպանանիցեն, բայց ասէին՝ թէ մի՛ ի տօնի աստ, զի մի՛ խռովութիւն լինիցի ի ժողովրդեանն։ Եւ մինչ էր ի Բեթանիա ի տան Սիմոնի բորոտի բազմեալ, եկն կին մի որ ունէր շիշ իւղոյ նարդեան ազնուի մեծագնոյ, և բեկեալ զշիշն՝ եհեղ ի վերայ գլխոյ նորա։ Եւ աշակերտքն զչարէին և ասէին. ընդէ՞ր եղև կորուստ իւղոյդ այդորիկ. մարթ էր զայդ իւղ վաճառել աւելի քան երեք հարիւր դահեկանի, և տալ աղքատաց. և զայրանային նմա յոյժ։ Եւ Յիսուս ասէ ցնոսա. թոյլ տուք դմա. զի՞ աշխատ առնէք, զի գործ մի բարի գործեաց դա յիս. յամենայն ժամ զաղքատս ընդ ձեզ ունիք, և յորժամ կամիք՝ կարող էք առնել նոցա բարիս. այլ զիս ոչ յամենայն ժամ ընդ ձեզ ունիք։ Դա զոր ունէրդ՝ արար. յառաջագոյն խնկեաց ըզ-

Digitized by Google

մարմին իմ ի նշան պատմանաց։ Ամէն ասեմ ձեզ, ուր և քարոզեսցի աւետարանս այս ընդ ամենայն աշխարհ, և զոր արար դա՝ խօսեսցի վասն յիշատակի դորին։ Եւ Յուդա Սկարիովտացի մի յերկոտասանից անտի՝ գնաց առ քահանայապետսն՝ զի մատնեսցէ զնա նոցա։ Նոքա իբրև լուան՝ խնդացին, և խոստացան տալ նմա արծաթ. և խնդրէր՝ թէ զիա՞րդ պարապով մատնեսցէ ըզնա։ Եւ յառաջնում աւուր բաղարջակերացն՝ յորժամ զզատիկն զենուին, ասեն ցնա աշակերտքն. ո՞ւր կամիս՝ երթիցուք պատրաստեսցուք, զի կերիցես զզատիկն։ Եւ առաքէ երկուս յաշակերտաց անտի՝ և ասէ ցնոսա. երթայք ի քաղաքն և իբրև մտանիցէք ի քաղաքն՝ պատահեսցէ ձեզ այր մի որ սափոր ջրոյ յուս ունիցի, երթայք զհետ նորա. և յոր տուն մտանիցէ, ասասջիք ցտանուտէրն. վարդապետ ասէ՝ ո՞ւր են իջավանքն, ուր աշակերտօքս ուտիցեմ զզատիկն. և նա ցուցցէ ձեզ վերնատուն մի մեծ զարդարեալ, անդ պատրաստեսջիք մեզ։ Եւ գնացին պատրաստել աշակերտքն նորա. եկին ի քաղաքն, և գտին որպէս ասացն նոցա. և պատրաստեցին զզատիկն։ Եւ իբրև երեկոյ եղև՝ գայ երկոտասանիւքն հանդերձ։ Եւ իբրև բազմեցան և դեռ ուտէին, ասէ Յիսուս. ամէն ասեմ ձեզ՝ զի մի ոմն ի ձէնջ մատնելոց է զիս, որ ուտէ իսկ ընդ իս։ Եւ նոքա սկսան տրտմել և ասել մի ըստ միոջէ. միթէ ե՞ս իցեմ, և միւսն՝ միթէ ե՞ս իցեմ։ Նա պատասխանի ետ և ասէ ցնոսա. մի յերկոտասանից այտի, որ մխեաց ընդ իս ի սկաւառակդ։ Այլ որդի մարդոյ երթայ՝ որպէս և գրեալ է վասն նորա. բայց վայ իցէ մարդոյն այնմիկ՝ յոյր ձեռըս որդի մարդոյ մատնեսցի. լաւ էր նմա՝ եթէ չէր իսկ ծնեալ մարդն այն։ Եւ մինչդեռ ուտէին, առեալ Յիսուսի հաց՝ օրհնեաց և եբեկ ետ նոցա և ասէ. առէք, այդ է մարմին իմ։ Եւ առեալ բաժակ՝ գոհացաւ ետ նոցա, և արբին ի նմանէ ամենեքեան։ Եւ ասէ ցնոսա. այս է արիւն իմ նորոյ ուխտի, որ փոխանակ բազմաց հեղանի։ Ամէն ասեմ ձեզ, թէ ոչ ևս յաւելից ըմպել ի բերոյ որթոյ, մինչև ցօրն ցայն՝ յորժամ արբից զնա նոր յարքայութեան Աստուծոյ։ Եւ գոհացեալ՝ ելին ի լեառն ձիթենեաց։ 26։

Քաղ. Խնդրեսցուք։ Կեցո։ Է Ըն—։ Աղ. Թագաւոր խաղ։

# ԱՒԱԳ ՈՒՐԲԱԹ · ԴՋ

## Ի ԳԻՇԵՐԻ

ԿԱՆՈՆԱԳԼՈՒԽ ԴՋ. Օրհնեա անձն իմ զՏէր։

ՀԵՏԵՒԱԿ ՇԱՐԱԿԱՆ ԴՋ

ԱՅՍՕՐ ի կատարումն աստուածային ընթրեաց նոր ուխտի ճշմարտութեան քո. ի վերնատունն խորհրդոյ տարամերժեալ Յուդաս ի հօտէն փրկչին. ուստի եւ դու գառն Աստուծոյ դիմեալ կամաւ ի մահ խաչին առ ի բառնալ ըզմեղս աշխարհի. Վասն որոյ խնդրեա ի մեզ Քրիստոս կամաւոր քո չարչարանօք։ Այսօր որ ի հրեղէն զօրաց երկնից միշտ փառաբանեալ երկրպագելիս Բանդ. աղօթէիր առ Հայր մարմնով ընկալեալ ընդ Հօր ըզքո վասն իմ զպատղամատանս. ուստի կամաւ կրելով զերկիւղ ի հրեշտակաց զօրանայիր զօրացուցիչդ երկնաւորաց եւ երկրաւորաց. վասն։ Այսօր յառաջ նըշանակեալ հրամանըն քո կատարէիր յաշակերտաց դասն. քանզի զհովիւըդ քաջ հարեալ ցըրուեցաւ հօտն ըստ մարգարէին. որ եւ կապեցար անկապելիդ ի յԱննայէ և ի Կայիափայ դատապարտեալ ի ծառայէն ապտակեցար և նախատանաց թուք կերպարանըդ Հօր ընկալար. վասն։ Այսօր ըզվէմըն հաւատոյ շարժեալ փորձողին խաբէութեան մարտ. առ ի քէն թողացուցեալ ըզմարդկային տըկարութիւնս յանդիմանելով. եւ առ յոյս դարձի մեղաւորաց որ դառնապէս արտասուելովն ընկալաւ ի քէն երիւք հարցմամբ սիրոյն զերից ուրացութեանցն ըզբըժըշկութիւն. ընդ նմին բըժըշկեա ըզմեզ Քրիստոս և շնորհեա մեզ արտասուօք ապաշխարութիւն։

Digitized by Google

† Այսօր զոր յերկնայինն լուսեղինացն անհիւ պատուեալ բանդ Աստուած . Նըսեմացեալ դասք եբրայեցւոցն . զիմանալին զլոյս ի գիշերի ջահիւք և սուսերօք եկեալ ըմբռնել զանըմբռնելիդ . ‖ վասն որոյ երկրպագեմք անճառելի քո խոնարհութեանդ ։ Այսօր զոր սերովբէքըն ծածկէին ըզդէմս յահէ փառաց աստուածութեանդ . Իսկ կորըստեան որդին Յուդաս . ի համբոյր մերձեալ նենգութեամբ նըշանակ եւ առիթ մահուանմահիդ . վասն ։ Այսօր ընդ գերագոյն տնօրէնութիւնըդ քո Որդի Աստուածոյ . հոյլք անմարմնոցըն հրաբուն սեռիցն . պակուցեալ զարմանային տեսանելով զանտեսանելիդ մատնեալ կամաւ ի ձեռըս մեղաւորաց . վասն ։ Այսօր բարեկամք և մերձաւորըք քո հեռի եղեն ի քէն Քրիստոս . օտարացան եւ եղբարըք քո . եւ ցուլըք գէրք պաշարեցին որք ի դըպրաց և ի փարիսեցւոց . եւ շուրջ եղեն շունըք բազումք զինուորք Պիղատոսի եւ Հերովդէի . վասն ։

Քոչ. Եւ ես խաղ ։ Մող. Օրհնութիւն և փառք ։

Եւ տան լուցանեն երկոտասան մոմեղէնս ի վերայ սեղանոյն յաջակոյս և յահեկոյս, և մոմեղէն մի մեծ ի մէջն ։ Եւ ասեն ի Նին ։

ՍԱՂՄՈՍ Բ

Ընդէր խռովեցան հեթանոսք, և ժողովուրդք խորհեցան ի սնոտիս ։

Յանդիման եղեն թագաւորք երկրի, և իշխանք ժողովեցան ի միասին վասն Տեառն և վասն օծելոյ նորա ։

Խզեսցուք զկապանս նոցա , և ընկեսցուք ի մէնջ ըզլուծ նոցա ։

Բնակեալն յերկինս ծիծաղեսցի զնոքօք , և Տէր արհամարհեսցէ զնոսա ։

Յայնժամ խօսեսցի ընդ նոսա բարկութեամբ իւրով , և սրտմտութեամբ իւրով խռովեսցուսցէ զնոսա ։

Ես կացի թագաւոր ի նմանէ , ի վերայ Սիովնի լերին սրբոյ նորա՝ պատմել ինձ զհրամանս Տեառն ։

*Տէր ասաց ցիս՝ որդի իմ ես դու, ես այսօր ծնայ զքեզ։*

*Խնդրեա յինէն և տաց քեզ զհեթանոսս ի ժառանգութիւն, և իշխանութիւն քեզ զամենայն ծագս երկրի։*

*Հովուեսցես զնոսա գաւազանաւ երկաթեաւ, որպէս զանօթ բրտի փշրեսցես զնոսա։*

*Արդ թագաւորք զայս ի միտ առէք, խրատեցարուք ամենեքեան որք դատիք զերկիր։*

*Ծառայեցէք Տեառն երկիւղիւ, և ցնծացէք առաջի նորա դողութեամբ։*

*Ընկալարուք զխրատ նորա՝ զի մի՛ բարկասցի Տէր, և կորնչիցիք ի ճանապարհացն արդարութեան։*

*Ի ժամանակի որպէս բորբոքեսցի բարկութիւն նորա։*

*Երանի ամենեցուն՝ որք յուսացեալ են ի Տէր։*

## ՍԱՂՄՈՍ Գ

*Տէր, զի՞ բազում եղեն նեղիչք իմ. բազումք յարեան ի վերայ իմ։*

*Բազումք ասէին զանձնէ իմմէ, թէ չիք փրկութիւն սորա առ Աստուած իւր։*

*Այլ դու Տէր օգնական իմ ես, փառք իմ և բարձրացուցիչ գլխոյ իմոյ։*

*Ձայնիւ իմով ես առ Տէր կարդացի, լուաւ ինձ ի լեռնէ սրբոյ իւրմէ։*

*Ես ննջեցի և ի քուն եղէ, զարթեայ և Տէր ընդունելի իմ է։*

*Ոչ երկեայց ես ի բիւրուց զօրաց նոցա, որք շուրջանակի պատեալ պաշարէին զիս։*

*Արի Տէր, և փրկեա զիս, Աստուած իմ. զի դու հարեր զամենեսեան որք էին ընդ իս թշնամութեամբ ի տարապարտուց, և զատամունս մեղաւորաց փշրեցեր։*

*Տեառն է փրկութիւն, ի վերայ ժողովրդեան քո օրհնութիւն քո։*

## ՍԱՂՄՈՍ Դ

*Ի կարդալ իմում լուար ինձ Աստուած ըստ արդարութեան, ի նեղութեան ինձ անդորր արարեր. ողորմեա ինձ և լուր աղօթից իմոց։*

*Որդիք մարդկան, մինչև յե՞րբ էք խստասիրտք. ընդէ՞ր սիրէք զնանրութիւն, և խնդրէք զստութիւն։*

Digitized by Google

Ծաներուք զի սքանչելիս արար Տէր սրբոյ իւրում. և Տէր լուիցէ ինձ ի կարդալ իմում առ Նա ։

Բարկանայք՝ և մի՛ մեղանչէք. զոր ինչ ասէք ի սիրտըս ձեր՝ յանկողինս ձեր զղջացարուք ։

Մատուցէք պատարագ արդարութեան, և յուսացարուք ի Տէր ։

Բազումք ասէին թէ ո՛ ցուցցէ մեզ զբարութիւն Տեառըն. Նշանեցաւ առ մեզ լոյս երեսաց քոց, և ետուր ուրախութիւն սրտից մերոց ։

Ի պտղոյ ցորենոյ, գինւոյ ձիթոյ իւրեանց լցուցեր զնոսա ։

Խաղաղութեամբ յայս և ի սոյն ննջեսցուք և զարթիցուք. զի դու Տէր միայն առանձին յուսով քով բնակեցուցեր զմեզ ։

Եւ ասեն եղանակին ձայնիւ կցուրդ ։

Ի՛շխա՛նք ժո՛ղո՛վեցա՛ն ի միա՛սի՛ն. վա՛սըն Տեառն եւ վա՛սն օծե՛լոյ Նորա՛ ։

Երեք անգամ ասեն, և շարականն բոլոր ։

Ապա Երգ Տեառն Ներսեսի ասացեալ յաղագս մեծի ուրբաթին փրկչին չարչարանացն ։

ՇԱՐԱԿԱՆ ԴԿ

Այսօր անձառ լուսոյն ծագումն ։ Ա. ձեռ տուն ։ 164 ։

Ապա յառաջերգեան տունն. Օրհնի

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Յովհաննու ։ ԺԳ. 16 ։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս ասէ.

Ամէն ամէն ասեմ ձեզ. ոչ է ծառայ մեծ քան զտէր իւր, և ոչ առաքեալ մեծ քան զայն որ առաքեացն ըզնա ։ Եթէ զայս գիտէք, երանելի եւս էք՝ եթէ առնիցէք զայս ։ Ոչ վասն ամենեցուն ձեր ասեմ. զի ես գիտեմ զորս ընտրեցի. այլ զի լցցի գիրն, թէ որ ուտէր ընդ իս հաց՝ արար ինձ խաբէութիւն ։ Յայսմ հետէ իսկ ասեմ ձեզ մինչ չև եղեալ, զի յորժամ լինիցի հաւատասջիք թէ ես եմ ։ Ամէն ասեմ ձեզ. որ ընդունի զոր ոք ես առաքեցից՝ զիս ընդունի, և որ զիս ընդունի՝ ընդունի զայն որ առաքեացն զիս ։ Զայս իբրև ասաց Յիսուս, խռովե-

Digitized by Google

ցաւ յոգի իւր, վկայեաց և ասէ. ամէն ամէն ասեմ ձեզ, զի մի ոմն ի ձէնջ մատնելոց է զիս։ Հայէին ընդ միմեանս աշակերտքն տարակուսեալք թէ զումէ ասիցէ։ Եւ էր մի ոմն յաշակերտացն բազմեալ առ Յիսուսիւ, զոր սիրէրն Յիսուս. ակնարկէ նմա Սիմովն Պետրոս հարցանել՝ ո՞ իցէ, վասն որոյ ասէն։ Եւ նա անկեալ զլանջօքն Յիսուսի, ասէ ցնա. Տէր, ո՞վ է։ Պատասխանի ետ Յիսուս և ասէ. այն է՝ որում ես թացից զպատառն և տաց։ Եւ թացեալ զպատառն՝ տայ Յուդայի Սկարիովտացւոյ. և յետ պատառոյն՝ ապա եմուտ ի նա սատանայ։ Եւ ասէ ցնա Յիսուս. արդ որ զինչ առնելոցն ես՝ արա վաղվաղակի։ Եւ զայս ոչ ոք իմացաւ ի բազմականաց անտի՝ թէ առ ինչ ասաց ցնա. զի ոմանք համարէին թէ զի զարկղն ունէր Յուդա, ասաց նմա Յիսուս, գնեա ինչ որ պիտոյ իցէ մեզ ի տօնիս, և կամ զի աղքատաց ինչ տացէ։ Իսկ նորա առեալ զպատառն՝ ել արտաքս վաղվաղակի, և էր գիշեր։ Եւ իբրև ել, ասէ Յիսուս. այժմ փառաւորեցաւ որդի մարդոյ, և Աստուած փառաւորեցաւ ի նմա։ Զի եթէ Աստուած փառաւորեցաւ ի նմա, և Աստուած փառաւորեսցէ զնա յանձն իւր. և վաղվաղակի փառաւորեսցէ զնա։ Որդեակք իմ, փոքր ինչ ժամանակ ընդ ձեզ եմ. խնդրեցէք զիս. և որպէս ասացի ցհրեայսն, եթէ ուր եսն երթամ՝ դուք ոչ կարէք գալ, և արդ ձեզ ասեմ։ Պատուիրան նոր տամ ձեզ, զի սիրիցէք զմիմեանս. որպէս սիրեցի ես զձեզ, զի և դուք սիրեսջիք զմիմեանս։ Յայսմ գիտասցեն ամենեքեան՝ եթէ իմ աշակերտք էք, եթէ սիրիցէք զմիմեանս։ Ասէ ցնա Սիմովն Պետրոս. Տէր, յո՞ երթաս։ Պատասխանի ետ Յիսուս. ուր եսն երթամ՝ դու ոչ կարես այժմ գալ զկնի իմ, բայց ապա եկեսցես զկնի իմ։ Ասէ ցնա Պետրոս. Տէր, ընդէ՞ր ոչ կարիցեմ գալ այժմ զկնի քո. արդէն զանձն իմ իսկ եդից ի վերայ քո։ Պատասխանի ետ Յիսուս. զանձըն քո դիցես ի վերայ իմ. ամէն ամէն ասեմ քեզ. չև իցէ հաւու խօսեալ, մինչ դու երիցս ուրասցիս զիս։ Մի՛ խռովեսցին սիրտք ձեր, այլ հաւատացէք յԱստուած, և յիս հաւատացէք։ Ի տան Հօր իմոյ օթևանք բազում են. ապա թէ ոչ՝ ասացեալ էր իմ ձեզ, եթէ երթամ և պատրաստեմ ձեզ տեղի։ Եւ եթէ երթամ և պա-

Digitized by Google

տրաստեմ ձեզ տեղի, դարձեալ գամ և առնում զձեզ առ իս. զի ուր եսն իցեմ, և դուք անդ իցէք. և ուր երթամն՝ գիտիցէք, և զճանապարհն գիտիցէք: Ասէ ցնա Թովմաս. Տէր, ոչ գիտեմք յո՛վ երթաս, և զիա՞րդ զճանապարհն կարասցուք գիտել: Ասէ ցնա Յիսուս. ես եմ ճանապարհն և ճշմարտութիւն և կեանք. ոչ ոք գայ առ Հայր՝ եթէ ոչ ինև: Եթէ զիս գիտէիք, ապա և ըզՀայր իմ գիտէիք, և այսուհետև գիտասջիք զնա: Ասէ ցնա Փիլիպպոս. Տէր, ցոյց մեզ զՀայր՝ և շատ է մեզ: Ասէ ցնա Յիսուս. այսչափ ժամանակս ընդ ձեզ եմ, և ո՞չ ծանեար զիս Փիլիպպէ. որ ետես զիս՝ ետես զՀայրն. և դու զիա՞րդ ասես՝ եթէ ցոյց մեզ զՀայր: Ո՞չ հաւատաս եթէ ես ի Հայր, և Հայր յիս է. բանն զոր ես խօսիմ ընդ ձեզ, ոչ եթէ յանձնէ ինչ խօսիմ, այլ Հայրն որ յիս բնակեալ է նա գործէ զգործսն: Հաւատա՞յք ինձ՝ եթէ ես ի Հայր և Հայր յիս: Ապա թէ ո՛չ՝ գոնէ վասն գործոցն հաւատացէք ինձ: Ամէն ամէն ասեմ ձեզ, թէ որ հաւատայն յիս, զգործս զոր ես գործեմ, և նա գործեսցէ, և մեծամեծս ևս քան զնոյնս գործեսցէ. զի ես առ Հայր երթամ: Եւ զոր ինչ խնդրիցէք յանուն իմ, արարից զայն. զի փառաւորեսցի Հայր յՈրդի: Եթէ սիրէք զիս՝ զպատուիրանս իմ պահեսջիք. և ես աղաչեցից զՀայր, և այլ մխիթարիչ տացէ ձեզ, զի ընդ ձեզ բնակեսցէ ի յաւիտեան. զՀոգին ճշմարտութեան, զոր աշխարհս ոչ կարէ ընդունել, զի ոչ տեսանէ զնա և ոչ ծանաչէ զնա. բայց դուք ճանաչէք զնա, զի առ ձեզ բնակեսցէ, և ընդ ձեզ եղիցի: Ոչ թողից զձեզ որբս, գամ առ ձեզ. փոքր միւս ևս, և աշխարհս ոչ ևս տեսանէ զիս. բայց դուք տեսանիցէք զիս. զի ես կենդանի եմ, և դուք կենդանի լինելոց էք: Յայնմ աւուր գիտասջիք դուք, զի ես ի Հօր իմում, և դուք յիս, և ես ի ձեզ: Որ ունի զպատուիրանս իմ և պահէ զնոսա, նա է որ սիրէ զիս. և որ սիրէն զիս՝ սիրեսցի ի Հօրէ իմմէ. և ես սիրեցից զնա, և երևեցուցից նմա զիս: Ասէ ցնա Յուդա՝ ոչ Սկարիովտացին. Տէր, զի՞ եղև՝ զի մեզ յայտնելոց ես զքեզ՝ և ոչ աշխարհի: Պատասխանի ետ Յիսուս և ասէ ցնա. եթէ ոք սիրէ զիս՝ զբանն իմ պահեսցէ, և Հայր իմ սիրեսցէ զնա. և առ նա եկեսցուք, և օթևանս առ նմա արասցուք. և որ ոչն սիրէ զիս՝ ըզ-

Digitized by Google

բանս իմ ոչ պահէ. և բանն իմ զոր լսէք՝ ոչ է իմ, այլ Հօրն՝ որ առաքեացն զիս: Զայս խօսեցայ ընդ ձեզ մինչ առ ձեզս եմ. իսկ մխիթարիչն Հոգին սուրբ՝ զոր առաքեսցէ Հայր յանուն իմ, նա ուսուսցէ ձեզ զամենայն, և յիշեցուսցէ ձեզ զամենայն որ ինչ ասացի ձեզ: Խաղաղութիւն թողում ձեզ, զխաղաղութիւն զիմ տամ ձեզ. ոչ որպէս աշխարհս տայ՝ տամ ես ձեզ. մի՛ խռովեսցին սիրտք ձեր, և մի՛ զանգիտեսցեն: Լուայք զի ասացի ես ձեզ՝ թէ երթամ և գամ առ ձեզ. եթէ սիրէիք զիս՝ ապա ուրախ լեալ էր ձեր՝ եթէ ես առ Հայր երթամ, զի Հայր իմ մեծ է քան զիս: Եւ այժմ ասացի ձեզ մինչչև եղեալ, զի յորժամ լինիցի՝ հաւատասջիք: Ոչ ևս այլ շատ խօսեցայց ընդ ձեզ. գայ իշխան աշխարհիս այսորիկ, և յիս ինչ ոչ գտանէ: Այլ զի ծանիցէ աշխարհ՝ եթէ սիրեմ զՀայր, և որպէս պատուիրեաց ինձ Հայրն՝ այնպէս առնեմ. ո՛ն արիք գնասցուք աստի: Ես եմ որթըն ճշմարիտ, և Հայր իմ մշակ է. ամենայն ուռ որ յիս է և ոչ բերէ պտուղ, կտրէ զնա. և ամենայն որ բերէ պտուղ՝ սրբէ զնա, զի առաւել ևս պտղաբեր լիցի: Դուք արդէն իսկ սուրբ էք վասն բանին՝ զոր խօսեցայ ընդ ձեզ: Կացէք յիս՝ և ես ի ձեզ. որպէս ուռն ոչ կարէ պտուղ բերել յանձնէ իւրմէ, եթէ չիցէ հաստատեալ յորթն, նոյնպէս և դուք՝ եթէ ոչ յիս հաստատեալ իցէք: Ես եմ որթ՝ և դուք ուռ. որ հաստատեալ է յիս՝ և ես ի նա, նա բերէ պտուղ յոյժ. զի առանց իմ ոչ ինչ կարէք առնել: Եթէ ոք ոչ է հաստատեալ յիս, ել նա արտաքս իբրև զուռն, և ցամաքեցաւ. և ժողովեն զնա, և ի հուր արկանեն և այրի: Եթէ կայցէք յիս, և բանքն իմ ի ձեզ կայցեն. զոր ինչ կամիցիք խնդրեսջիք՝ և լինիցի ձեզ: Յայսմիկ փառաւորեցաւ Հայր իմ, զի պտուղ յոյժ բերիցէք, և եղիջիք իմ աշակերտք: Որպէս սիրեաց զիս Հայրն իմ, և ես սիրեցի զձեզ. հաստատուն կացէք ի սէր իմ. եթէ պահիցէք զպատուիրանս իմ. կացջիք ի սէր իմ. որպէս ես զպատուիրանս Հօր իմոյ պահեցի, և կամ ի սէր նորա: Զայս խօսեցայ ընդ ձեզ, զի ուրախութիւնն իմ ի ձեզ իցէ, և ձեր ուրախութիւնըն լցեալ եղիցի: Այս է պատուէր իմ, զի սիրեսջիք զմիմեանս, որպէս և ես սիրեցի զձեզ: Մեծ ևս քան զայս սէր՝ ոչ ոք ունի, եթէ զանձն իւր դիցէ ի վերայ

Digitized by Google

բարեկամաց իւրոց: Դուք բարեկամք էք իմ, եթէ առ-
նիցէք զոր ես պատուիրեմ ձեզ. ոչ ևս կոչեմ զձեզ
ծառայս, զի ծառայն ոչ գիտէ զինչ գործէ տէրն նորա.
այլ զձեզ կոչեցի բարեկամս, զի զամենայն զոր լուայ ի
Հօրէ իմմէ՝ ծանուցի ձեզ: Ոչ եթէ դուք ընտրեցէք զիս,
այլ ես ընտրեցի զձեզ. և եդի զձեզ՝ զի դուք երթայ-
ցէք և պտղաբերք լինիցիք. և պտուղն ձեր կացցէ: Եւ
զոր ինչ խնդրիցէք ի Հօրէ իմմէ յանուն իմ, տացէ ձեզ:
Զայս պատուիրեմ, զի սիրեսջիք զմիմեանս: Եթէ աշ-
խարհ զձեզ ատեայ, գիտասջիք զի նախ զիս ատեաց:
Եթէ յաշխարհէ աստի էիք՝ աշխարհ զիւրսն սիրէր ար-
դեօք. բայց զի չէք յաշխարհէ, այլ ես ընտրեցի զձեզ
յաշխարհէ, վասն այնորիկ ատեայ զձեզ աշխարհ: Յի-
շեցէք զբանն զոր ասացի ձեզ, թէ ոչ է ծառայ մեծ
քան զտէր իւր. եթէ զիս հալածեցին, ապա և զձեզ
հալածեսցեն. եթէ զբանն իմ պահեցին, ապա և զձերն
պահեսցեն: Այլ զնոյնս արասցեն ընդ ձեզ վասն անուան
իմոյ, զի ոչ գիտեն զայն՝ որ առաքեաց զիս: Իսկ եթէ
չէր եկեալ և խօսեցեալ ընդ նոսա, մեղ ինչ ոչ գոյր
նոցա. բայց արդ չիք ինչ պատճառք վասն մեղաց իւ-
րեանց: Որ զիս ատեայ, և զՀայրն իմ ատեայ: Եթէ
զգործսն չէր գործեալ ի նոսա՝ զոր ոչ այլ ոք գոր-
ծեաց, մեղ ինչ ոչ գոյր նոցա, բայց արդ տեսին և
ատեցին՝ և զիս և զՀայր իմ. այլ զի լցցի բանն, որ
յօրէնս նոցա գրեալ է, թէ ատեցին զիս տարապարտուց:
Բայց յորժամ եկեսցէ մխիթարիչն, զոր ես առաքեցից
ձեզ ի Հօրէ, զՀոգին ճշմարտութեան որ ի Հօրէ ելանէ,
նա վկայեսցէ վասն իմ. և դուք վկայէք, զի ի սկզբանէ
ընդ իս էք: Զայս խօսեցայ ընդ ձեզ՝ զի մի՛ գայթագ-
ղեսջիք. ի ժողովրդոց իւրեանց հանիցեն զձեզ: Այլ ե-
կեսցէ ժամանակ, զի ամենայն որ սպանանիցէ զձեզ՝
համարիցի պաշտօն մատուցանել Աստուծոյ: Եւ զայն ա-
րասցեն ընդ ձեզ, քանզի ոչ ծանեան զՀայր և ոչ զիս:
Այլ և զայս խօսեցայ ընդ ձեզ, զի յորժամ եկեսցէ ժա-
մանակ՝ յիշիցէք՝ թէ ես ասացի ձեզ: Զայս ի սկզբանէ
ոչ ասացի ձեզ, քանզի ընդ ձեզ էի: Բայց արդ երթամ
ես առ առաքիչն իմ, և ոչ ոք ի ձէնջ հարցանէ ցիս՝ թէ
յո՞ երթաս. այլ զի զայս խօսեցայ ընդ ձեզ, տրտմու-
թիւն ելից զսիրտս ձեր: Այլ ես զճշմարիտն ասեմ ձեզ.

Digitized by Google

լաւ է ձեզ եթէ ես երթամ. զի եթէ ես ոչ երթայց՝
մխիթարիչն ոչ եկեսցէ առ ձեզ. ապա եթէ երթամ, ա-
ռաքեցից զնա առ ձեզ: Եւ նա եկեալ յանդիմանեսցէ
զաշխարհ վասն մեղաց, և վասն արդարութեան, և վա-
սըն դատաստանի: Վասն մեղաց, զի ոչ հաւատան յիս.
վասն արդարութեան, զի առ Հայր իմ երթամ, և ոչ
ևս տեսանէք զիս. վասն դատաստանի, զի իշխան աշ-
խարհիս այսորիկ դատապարտեալ է: Եւս բազում ինչ
ունիմ ասել ձեզ, այլ ոչ կարէք հանդարտել այժմիկ.
յորժամ եկեսցէ նա Հոգին ճշմարտութեան, առաջնոր-
դեսցէ ձեզ ամենայն ճշմարտութեամբ. զի ոչ եթէ յան-
ձնէ ինչ խօսիցի, այլ զոր լուիցէ խօսեսցի, և զգալոցն
պատմեսցէ ձեզ: Նա զիս փառաւորեսցէ, զի յիմմէ ան-
տի առնուցու և պատմեսցէ ձեզ: Զամենայն ինչ զոր
ունի Հայր՝ իմ է. վասն այնորիկ ասացի ձեզ, թէ յիմ-
մէ անտի առնուցու՝ և պատմեսցէ ձեզ: Փոքր մի՝ և ոչ
ևս տեսանէք զիս, և ապա սակաւիկ մի՝ և տեսանիցէք
զիս. և ես երթամ առ Հայր: Ասէին ոմանք յաշակեր-
տաց անտի ցմիմեանս. զի՞նչ է այս՝ զոր ասէ ցմեզ, թէ
փոքր մի՝ և ոչ տեսանէք զիս, և դարձեալ սակաւիկ մի՝
և տեսանիցէք զիս. և եթէ ես առ Հայր իմ երթամ:
Եւ ասէին. զի՞նչ իցէ այն փոքր միւս ևս, չգիտեմք
զինչ խօսի: Գիտաց Յիսուս եթէ կամէին զնա հարցա-
նել, և ասէ ցնոսա. վասն այդորիկ խնդրէք ընդ մի-
մեանս զի ասացի՝ թէ փոքր մի՝ և ոչ տեսանէք զիս, և
դարձեալ սակաւիկ միւս ևս և տեսանիցէք զիս: Ամէն
ամէն ասեմ ձեզ, զի լացջիք և ողբասջիք դուք, և աշ-
խարհ խնդասցէ. դուք տրտմեսջիք, այլ տրտմութիւն
ձեր յուրախութիւն եղիցի: Կին յորժամ ծնանիցի՝
տրտմութիւն է նմա, զի հասեալ է ժամ նորա. այլ
յորժամ ծնցի զմանուկն, ոչ ևս յիշէ զնեղութիւնն վասն
խնդութեանն, զի ծնաւ մարդ յաշխարհ: Եւ դուք այժմ
տրտմութիւն ունիք, այլ դարձեալ տեսից զձեզ, և ու-
րախ լիցին սիրտք ձեր, և զուրախութիւնն ձեր ոչ ոք
հանիցէ ի ձէնջ: Եւ յայնմ աւուր զիս ինչ ոչ հարցանի-
ցէք: Ամէն ամէն ասեմ ձեզ, զի զոր ինչ խնդրիցէք ի
Հօրէ իմմէ յանուն իմ, տացէ ձեզ: Մինչև ցայժմ ոչ ինչ
խնդրեցէք յանուն իմ. խնդրեցէք՝ և առնուցուք. զի
ուրախութիւնն ձեր լցեալ իցէ: Զայս առակօք խօսեցայ

Digitized by Google

ընդ ձեզ. եկեսցէ ժամանակ՝ յորժամ ոչ ևս առակօք խօսեցայց ընդ ձեզ, այլ յայտնապէս զՀօրէ պատմեցից ձեզ։ Յայնմ աւուր խնդրեսջիք յանուն իմ. և ոչ ասեմ ձեզ՝ եթէ ես աղաչեցից զՀայր վասն ձեր. զի ինքն իսկ Հայր սիրէ զձեզ՝ զի դուք զիս սիրեցէք, և հաւատացէք եթէ ես յԱստուծոյ ելի։ Ելի ի Հօրէ՝ և եկի յաշխարհ, դարձեալ թողում զաշխարհ, և երթամ առ Հայր։ Ասեն ցնա աշակերտքն. ահա արդ յայտնութեամբ խօսիս, և առակ և ոչ մի ինչ ասես. այժմիկ գիտեմք՝ եթէ գիտես զամենայն, և ոչ ինչ պիտոյ է՝ եթէ ոք հարցանիցէ զքեզ. յայսմիկ հաւատամք եթէ յԱստուծոյ ելեր։ Պատասխանի ետ նոցա Յիսուս և ասէ. այժմ հաւատայք։ Ահա եկեսցէ ժամ, և եկեալ իսկ է, զի ցրուեսջիք յիւրաքանչիւր տեղիս, և զիս միայն թողուցուք. և չեմ միայն, զի Հայր ընդ իս է։ Զայս խօսեցայ ընդ ձեզ՝ զի ընդ իս խաղաղութիւն ունիցիք. յաշխարհի աստ նեղութիւն ունիցիք, այլ քաջալերեցարուք զի ես յաղթեցի աշխարհի։ Զայս իբրև խօսեցաւ Յիսուս, ամբարձ զաչս իւր յերկինս և ասէ. Հայր, հասեալ է ժամ, փառաւորեա զՈրդի քո, զի և Որդի քո փառաւորեսցէ զքեզ. որպէս ետուր նմա իշխանութիւն ամենայն մարմնոյ, զի ամենայնի զոր ետուր նմա, տացէ զկեանս յաւիտենականս։ Այս են յաւիտենական կեանք, զի ծանիցեն զքեզ միայն ճշմարիտ Աստուած, և զոր առաքեցեր զՅիսուս Քրիստոս։ Ես զքեզ փառաւորեցի յերկրի, զգործն կատարեցի՝ զոր ետուր ցիս զի արարից. և այժմ փառաւորեա զիս Հայր, առ ի քէն փառօքն զոր ունէի յառաջ քան զլինելն աշխարհի առ ի քէն։ Յայտնեցի զանուն քո մարդկան, զորս ետուր ինձ յաշխարհէ. քո էին, և ինձ ետուր զնոսա, և զբանն քո պահեցին։ Արդ գիտացին՝ եթէ զամենայն ինչ զոր ետուր ինձ, ետու նոցա. և նոքա ընկալան, և ծանեան ճշմարտութեամբ՝ թէ առ ի քէն ելի. և հաւատացին՝ եթէ դու առաքեցեր զիս։ Արդ՝ ես վասն նոցա աղաչեմ, և ոչ վասն աշխարհի աղաչեմ. այլ վասն նոցա զորս ետուրն ինձ, զի քո են. և որ ինչ իմ է, ամենայն քո է. և որ ինչ քո է, այն իմ է, և փառաւորեալ եմ ի նոսա։ Եւ ես ոչ ևս եմ յաշխարհի, և նոքա յաշխարհի են, և ես առ քեզ գամ. Հայր սուրբ, պահեա զնոսա յանուն

Digitized by Google

քո, որով ետուրն ինձ. զի եղիցին մի՝ որպէս և մեք մի եմք։ Մինչ էի յաշխարհի ընդ նոսա, ես պահէի զնոսա յանուն քո՝ որով ետուրն ինձ. և պահեցի. և ոչ ոք ի նոցանէ կորեաւ, բայց որդին կորստեան, զի գիրն լցցի։ Բայց արդ առ քեզ գամ. և զայս խօսիմ յաշխարհի, զի ունիցին զուրախութիւնն իմ լիով յանձինս իւրեանց։ Ես ետու նոցա զբանն քո, և աշխարհս ատեաց զնոսա. զի չեն յաշխարհէ, որպէս և ես չեմ յաշխարհէ։ Ոչ զայս աղաչեմ զի բարձցես զնոսա յաշխարհէ, այլ զի պահեսցես զնոսա ի չարէ։ Յաշխարհէ աստի չեն, որպէս և ես չեմ յաշխարհէ։ Սուրբ արա զնոսա ճշմարտութեամբ քով. զի քո բանդ ճշմարտութիւն է։ Որպէս զիս առաքեցեր յաշխարհ, և ես առաքեցի զնոսա յաշխարհ. և ի վերայ նոցա ես սուրբ առնեմ զանձն իմ, զի եղիցին և նոքա սրբեալք ճշմարտութեամբ։ Այլ ոչ վասն նոցա միայն աղաչեմ, այլ և վասն ամենայն հաւատացելոց բանիւն նոցա յիս. զի ամենեքին մի իցեն, որպէս դու Հայր յիս՝ և ես ի քեզ, զի և նոքա ի մեզ իցեն. զի և աշխարհ հաւատասցէ եթէ դու առաքեցեր զիս։ Եւ ես զփառսն զոր ետուր ինձ՝ ետու նոցա, զի իցեն մի՝ որպէս և մեք մի եմք. ես ի նոսա, և դու յիս, զի եղիցին կատարեալք ի մի։ Եւ գիտասցէ աշխարհ եթէ դու առաքեցեր զիս, և սիրեցի զնոսա որպէս դու զիս սիրեցեր։ Հայր, զորս ետուրն ինձ, կամիմ՝ զի ուր ես եմ, և նոքա իցեն ընդ իս. զի տեսանիցեն զփառսն իմ, զոր ետուրն ցիս. զի սիրեցեր զիս յառաջ քան զլինելն աշխարհի։ Հայր արդար, և աշխարհ զքեզ ոչ ծանեաւ. այլ ես զքեզ ծանեայ, և նոքա ծանեան՝ եթէ դու առաքեցեր զիս։ Եւ ծանուցի նոցա զանուն քո և ծանուցից, զի սէրն զոր սիրեցեր զիս՝ ի նոսա իցէ, և ես ի նոսա։ Զայս իբրև ասաց Յիսուս, ել աշակերտօքն հանդերձ յայնկոյս ձորոյն Կեդրոնի՝ ուր էր պարտէզ, յոր եմուտ ինքն և աշակերտքն իւր։ ԺԸ. 1։

Աղօթք հանդերձ ծունր դնելով զՏէր աղաչեսցուք։
Քահ. Տէր ողորմեա։ Երիցս կրկնեա։

Քար. Եւ ևս խաղ։ Քահ. Օրհնութիւն և փառք։

Ի վճարել ամէն մի աւետարանի՝ ընթերցանեն զերկուս սաղմոսն՝ մի յաջմէ և մի յահեկէ, յերկրորդում սաղմոսինացն, և յետոյ սկսեալ մինչև ցառաջինն։

ՍԱՂՄՈՍ Խ

Երանի որ խորհի զաղքատն և զտնանկն : 409 :

ՍԱՂՄՈՍ ԽԱ

Որպէս փափաքէ եղջերու յաղբերս ջուրց այնպէս : 410 :

ՍԱՂՄՈՍ ԽԲ

Դատ արա ինձ Աստուած . և իրաւ արա ինձ : 410 :

Կցուրդ :

Բա՛ն անօ՛րէ՛նութեա՜ն եդի՛ն ի՛ վե՛րա՜յ իմ . Տէ՛ր Տէ՛ր մի՛ թո՛ղո՛ւր զիս :

Իբրեւ անկաւ կրկնեա , և չլսեցին բարձր ասա :

ՇԱՐԱԿԱՆ ԴԿ

Էլից զօրէնսն Մովսեսի : Բ . ձից տառն : 165 :

ՁԿՆԷ ՕՐԹԻ

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու : ԻԲ . 1 :

Վասն չարչարանաց Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի .

Մերձեցաւ տօն բաղարջակերացն՝ որ կոչէր պասքա : Եւ խնդրէին քահանայապետքն և դպիրք՝ թէ որպէս սպանանիցեն զնա , բայց երկնչէին ի ժողովրդենէ անտի : Ապա եմուտ սատանայ ի Յուդա ի կոչեցեալն Սկարիովտացի , որ էր ի թուոյ երկոտասանիցն : Զոգաւ եդ բանս ընդ քահանայապետսն և ընդ դպիրս և ընդ իշխանս ժողովրդեանն , զի մատնեսցէ զնա նոցա : Եւ խնդացին , և խոստացան տալ նմա արծաթ . և յանձն առ , և խնդրէր պարապ մատնել զնա նոցա՝ մեկուսի յամբոխէն : Եկն օր բաղարջակերացն , յորում օրէն էր զենուլ զպասեքն . և առաքեաց զՊետրոս և զՅովհաննէս և ասէ . երթայք պատրաստեցէք մեզ զպասեքն զի կերիցուք : Եւ նոքա ասեն . ո՞ւր կամիս զի պատրաստեսցուք : Եւ ասէ ցնոսա . ահա իբրև մտանիցէք ի քաղաքն , պատահեսցէ ձեզ այր մի բարձեալ սափոր ջրոյ . երթիջիք զհետ նորա ի տունն յոր մտանիցէ , և ասասջիք ցտանուտէր տանն . վարդապետ ասէ քեզ , ո՞ւր են վանքն իմ՝ յորում զպասեքն ուտիցեմ աշակերտօքս հանդերձ . և նա ցուսցէ ձեզ վերնատուն մի մեծ զարդարեալ , և անդ պատրաստեսջիք : Եւ գնացեալ գտին որպէս և ասացն նոցա և պատրաստեցին զպասեքն : Եւ իբրև ժամ եղև՝ բազմեցաւ և երկոտասան առաքեալքն

Digitized by Google

ընդ նմա։ Եւ ասէ ցնոսա. ցանկանալով ցանկացայ զայս պասեք ուտել ընդ ձեզ՝ մինչ չեւ չարչարեալ իցեմ։ Բայց ասեմ ձեզ, թէ ոչ ևս կերայց ի սմանէ, մինչև լցցի յարքայութեան Աստուծոյ։ Եւ ընկալեալ բաժակ՝ գոհացաւ և ասէ. առէք զայդ և բաժանեցէք ի ձեզ։ Ասեմ ձեզ, թէ յայսմ հետէ ոչ արբից ի բերոյ որթոյ. մինչև եկեսցէ արքայութիւն Աստուծոյ։ Եւ առեալ հաց՝ գոհացաւ, եբեկ և ետ նոցա և ասէ. այս է մարմին իմ, որ վասն բազմաց տուեալ. զայս արասջիք առ իմոյ յիշատակի։ Նոյնպէս և զբաժակն յետ ընթրեացն առ և ասէ. այս բաժակ է նոր ուխտ իմով արեամբ վասն ձեր հեղլոյ։ Բայց աւասիկ ձեռն մատնչի իմոյ ընդ իս ի սեղանս. և որդի մարդոյ ըստ սահմանելոյն երթայ, բայց վա՜յ մարդոյն այնմիկ յոյր ձեռն մատնիցի։ Եւ նոքա սկսան խնդրել ընդ միմեանս, թէ ո՛վ է ի նոցանէ որ զայն գործելոց իցէ։ Եւ եղև հակառակութիւն ի մէջ նոցա, թէ ո՛վ ի նոցանէ համարիցի մեծ։ Եւ նա ասէ ցնոսա. թագաւորք ազգաց տիրեն նոցա, և որ իշխեն նոցա՝ բարերարք կոչին. այլ դուք ոչ այնպէս. այլ որ մեծն է ի ձեզ՝ եղիցի իբրև զկրտսերն, և առաջնորդն իբրև զսպասաւորն։ Ո՞վ է մեծ, բազմեա՞լն՝ եթէ սպասաւորն. ո՛չ ապաքէն բազմեալն. բայց ես եմ ի մէջ ձերում իբրև զսպասաւոր։ Եւ դուք էք՝ որ ցանգ կայիք ընդ իս ի փորձութիւնս իմ. և ես ուխտեմ ձեզ՝ որպէս և Հայր իմ ուխտեաց ինձ զարքայութիւն. զի ուտիցէք և ըմպիցէք ի սեղան իմ յարքայութեանն իմում, և նըստիցիք յերկոտասան աթոռ՝ դատել զերկոտասան ազգ Իսրայելի։ Եւ ասէ Տէր. Սիմովն՝ Սիմովն, ահա սատանայ խնդրեաց զձեզ խարբալել իբրև զցորեան. այլ ես աղաչեցի վասն քո՝ զի մի՛ պակասեսցեն հաւատք քո. և դու երբեմն դարձցիս և հաստատեսցես զեղբարս քո։ Եւ նա ասէ ցնա. Տէր, ընդ քեզ պատրաստ եմ և ի բանտ և ի մահ երթալ։ Եւ նա ասէ ցնա. ասեմ քեզ Պետրէ, չիցէ այսօր հաւու խօսեալ, մինչ երիցս ուրացիս զիս չգիտել։ Եւ ասէ ցնոսա. յորժամ առաքեցի ըզձեզ առանց քսակի և մախաղի և կօշկաց, միթէ կարօտացա՞յք իմիք։ Եւ նոքա ասեն. և ոչ իմիք։ Ապա ասէ. այլ այժմ որ ունի քսակ՝ բարձցէ, նոյնպէս և մախաղ. և որ ոչն ունիցի, վաճառեսցէ զձորձս իւր և

Digitized by Google

գնեսցէ իւր սուսեր ։ Բայց ասեմ ձեզ․ զի այս ևս որ գրեալ է՝ պարտ է զի կատարեսցի յիս, թէ ընդ անօրէնս համարեցաւ․ զի որ վասն իմ ինչ է՝ վճարեալ է ։ Եւ նոքա ասեն․ Տէր, ահաւասիկ են աստ երկու սուրք ։ Եւ նա ասէ ցնոսա․ բաւական են ։ Եւ ելեալ գնաց ըստ սովորութեանն ի լեառն ձիթենեաց, գնացին զհետ նորա և աշակերտքն ։ Իբրև եհաս ի տեղին՝ ասէ ցնոսա․ յաղօթս կացէք չմտանել ի փորձութիւն ։ Եւ ինքըն մեկնեցաւ ի նոցանէ իբրև քարընկէց մի, եդ ծունր՝ կայր յաղօթս և ասէր․ Հայր, եթէ կամիս՝ անցո զբաժակս զայս յինէն․ բայց ոչ իմ կամք՝ այլ քոյդ լիցին ։ Եւ երևեցաւ նմա հրեշտակ յերկնից՝ և զօրացուցանէր զնա․ և էր ի տագնապի, և մտադիւրութեամբ ևս կայր յաղօթս․ և հոսէին ի նմանէ քրտունք իբրև զկայլակս արեան՝ ոլոռն ոլոռն հեղեալ ի յերկիր ։ Եւ յարուցեալ յաղօթիցն, եկն առ աշակերտսն՝ եգիտ զնոսա ի քուն ի տրտմութենէն․ և ասէ ցնոսա․ զի՞ ննջէք, արիք կացէք յաղօթս՝ զի մի մտանիցէք ի փորձութիւն ։ Եւ մինչդեռ խօսէր, ահաւասիկ ամբոխ, և որ կոչէրն Յուդա՝ մի յերկոտասանիցն առաջնորդէր նոցա ։ Իբրև մերձեցաւ առ Յիսուս՝ համբուրեաց զնա․ քանզի զայն նշան տուեալ էր նոցա, թէ ընդ որում ես համբուրեցից՝ նա է, զնա ունիցիք ։ Ասէ ցնա Յիսուս․ Յուդա, համբուրելո՞վ մատնես զորդի մարդոյ ։ Իբրև տեսին որ զնովաւն էին՝ որ ինչ եղևն, ասեն ցնա․ Տէր, հարցուք զնոսա սրով․ Եւ եհար մի ոմն ի նոցանէ զքահանայապետին ծառայ, և ի բաց եհան զաջոյ ունկն նորա ։ Պատասխանի ետ Յիսուս և ասէ․ Թոյլ տուք մինչև ցայդ վայր ։ Եւ մատուցեալ յունկն՝ բժշկեաց զնա ։ Եւ ասէ ցեկեալսն ի վերայ նորա ցքահանայապետսն, և ցիշխանս տաճարին և ցծերսըն․ իբրև ի վերայ աւազակի՞ ելէք սուսերօք և բրօք․ հանապազ ընդ ձեզ էի ի տաճարին, և ոչ ձգեցէք ձեռս յիս․ այլ այս է ձեր ժամ և իշխանութիւն խաւարի ։ Եւ կալեալ զնա ածին և մուծին ի տուն քահանայապետին․ և Պետրոս երթայր զկնի նորա հեռագոյն ։ Իբրև լուցին կրակ ի մէջ գաւթին և նստան շուրջ, նստաւ և Պետրոս ի մէջ նոցա ։ Ետես զնա աղախին ոմն՝ զի նըստէր առ լոյսն, հայեցաւ ընդ նա և ասէ․ և սա ընդ նոսա էր որ ընդ նմայն էին ։ Իսկ Պետրոս ուրացաւ և

ասէ. ոչ գիտեմ զնա, կին դու։ Եւ յետ սակաւ միոյ՝ այլ ոմն ետես զնա և ասէ. և դու ի նոցանէ ես։ Եւ Պետրոս ասէ. այր դու, չեմ ի նոցանէ։ Եւ իբրև ժամ մի անց ի վերայ, այլ ոմն վիճէր և ասէր. ստոյգ և սա ընդ նմա էր, քանզի գալիլեացի է։ Ասէ Պետրոս. այր դու, չգիտեմ զինչ խօսիդ։ Եւ առժամայն մինչ դեռ նա զայն ասէր, խօսեցաւ հաւ։ Դարձաւ Տէր և հայեցաւ ի Պետրոս. և յիշեաց Պետրոս զբանն Տեառն՝ զոր ասաց ցնա. մինչ չև հաւու խօսեալ իցէ, երիցս ուրասցիս՝ չգիտել զիս. և ելեալ արտաքս՝ ելաց դառնապէս։ Եւ արքն, որ պահէին զնա, այպն առնէին զնովաւ և հարկանէին. ծածկէին զերեսս նորա և տանջէին, և հարցանէին ցնա և ասէին. մարգարեաց՝ ո՞վ է որ եհարն զքեզ։ Եւ այլ բազում ինչ հայհոյութեամբ խօսէին ի նա։ 65։

Աղօթք հանդերձ ծունր դնելով զՏէր աղաչեսցուք։ Քահ. Տէր ողորմեա։ Երիցս կրկնեա։

Քար. Եւ ևս խաղ։ Քահ. Օրհնութիւն և փառք։

ՍԱՂՄՈՍ ԾԸ

Փրկեա զիս ի թշնամեաց իմոց Աստուած, յայնցանէ որ յարուցեալ են ի վերայ իմ ապրեցո զիս։

Փրկեա զիս յայնցանէ ոյք գործեն զանօրէնութիւն, յարանց արիւնահեղաց ապրեցո զիս։

Որսալ զանձն իմ կամեցան, և հասին ի վերայ իմ հզօրք։

Ոչ մեղք իմ և ոչ յանցանք, առանց մեղաց ընթացայ և ուղիղ եղէ։

Զարթիր ընդ առաջ իմ և տես, դու Տէր զօրութեանց Աստուած Իսրայէլի։

Նայեաց և այց արա ամենայն հեթանոսաց, մի՛ ողորմիր ամենեցուն ոյք գործեն զանօրէնութիւն։

Դարձցին ընդ երեկոյս, սովեսցին որպէս շունք և շրջեսցին զքաղաքաւ։

Նոքա ղօղանջեսցեն բերանովք իւրեանց, և սուր ի շրթունս նոցա։

Իսկ արդ ո՞վ լուաւ զայս, զի դու Տէր ծիծաղեսցիս զնոքօք, և արհամարհեսցես զամենայն հեթանոսս։

Զզօրութիւն իմ առ քեզ պահեցից, զի Աստուած օգնական իմ է։

Digitized by Google

Աստուած իմ, ողորմութիւն նորա կանխեսցէ առ իս, և Աստուած իմ ցուցցէ ինձ ի թշնամիս իմ։

Մի՛ սպանաներ զնոսա, զի մի՛ մոռասցին զժողովուրդըս քո։

Ցրուեա զնոսա զօրութեամբ քով և ընկեա զնոսա, զի դու ես պաշտպան իմ Տէր։

Մեղք բերանոյ նոցա և բանք շրթանց նոցա, ընկլցին նոքա յամբարտաւանութեան իւրեանց։

Յանէծս և ի ստութիւն մատնեսցին, ի կատարածի բարկութեան սպառեսցին, և մի՛ գտցին։

Գիտասցեն զի Աստուած տիրէ Յակովբայ, և ամենայն ծագաց երկրի։

Դարձցին ընդ երեկոյս, սովեսցին որպէս շունք և շրջեսցին զքաղաքաւ։

Նոքա սփռեսցին յուտել, ապա թէ ոչ յագեսցին՝ տրտնջեսցեն։

Ես օրհնեցից զօրհնութիւնս Տեառն, ցնծացայց առաւօտուց յողորմութեան քում։

Զի եղեր իմ պաշտպան և տուն ապաւինի, յաւուր նեղութեան իմոյ օգնական իմ։

Քեզ սաղմոս ասացից, Աստուած ապաւէն իմ, Աստուած ողորմութեան իմոյ։

## ՍԱՂՄՈՍ ԾԹ

Աստուած մերժեցեր և աւերեցեր զմեզ, բարկացար և գթացիր ի մեզ։

Շարժեցեր զերկիր և խռովեցուցեր զսա, բժշկեա զհարուածս սորա զի սասանեցաւ։

Ցուցեր ժողովրդեան քում խստութիւն, և ետուր ըմպել մեզ գինի յիմարութեան։

Ետուր երկիւղածաց քոց նշան, զի ապրեսցին յերեսաց աղեղան։

Որպէս փրկեցան սիրելիք քո, կեցո աջով քո և լուր մեզ։

Աստուած խօսեցաւ ի սրբութենէ իւրմէ, ցնծացայց, բարձր եղէց, բաժանեցայց զՍիւքէմ, և զհովիտն յարկաց չափեցից։

Իմ է Գաղաադ և իմ է Մանասէ, Եփրեմ հզօրիչ գլխոյ իմոյ։

Յուդա թագաւոր իմ, Մովաբ աւազան յուսոյ իմոյ։

Յեդովմ ուղղեցից զգնացս իմ, և ինձ այլազգիք հնազանդ եղեն։

Digitized by Google

Ո՞ տարցի զիս ի քաղաք ամուր, կամ ո՞ առաջնորդե-
ցէ ինձ մինչև յԵդովմ ։

Եթէ ոչ դու Աստուած, որ մերժեցեր զմեզ, և ոչ ե-
լեր Աստուած ընդ զօրս մեր ։

Տուր մեզ օգնութիւն ի նեղութեան, զի ընդունայն է
փրկութիւն մարդոյ ։

Աստուծով արասցուք զօրութիւն, և նա արհամար-
հեսցէ զայնոսիկ որ նեղեն զմեզ ։

ՍԱՂՄՈՍ Կ

Լուր Աստուած աղօթից իմոց, և նայեա Տէր յաղօ-
թըս իմ ։

Ի ծագաց երկրէ կարդացի առ քեզ, մինչ ի վհատակել
սրտի իմոյ ։

Ի վիմէ բարձր արարեր զիս, առաջնորդեցեր ինձ, և
իմ եղեր յոյս, և աշտարակ հզօր եղեր ինձ յերեսաց
թշնամւոյն ։

Բնակեցայց ես ի յարկս քո յաւիտեան, և ծածկեցայց
ընդ հովանեաւ թևոց քոյ ։

Դու Աստուած լուար աղօթից իմոց, ետուր ժառան-
գութիւն՝ որք երկնչին յանուանէ քումմէ ։

Աւուրս յաւուրս յաւելեր թագաւորի ամաց նորա, ա-
ւուրս ազգաց մինչև յազգս նորա ։

Կայ և մնայ յաւիտեան առաջի Աստուծոյ ողորմութիւն,
և ճշմարտութիւն որք խնդրեսցեն ի նմանէ ։

Այսպէս սաղմոս ասացից քեզ յաւիտեանս յաւիտենից,
և տաց քեզ զաղօթս իմ օր ըստ օրէ ։

Կցուրդ

Փրկեա զիս ի թշնամեաց իմոց Աստուած. և ի
հալածչաց իմոց ապրեցո զիս ։

Երեք անգամ կրկնեա, և շարականն բարձր ասա ։

ՇԱՐԱԿԱՆ ԴԿ

Խնամով սիրոյն յիւր սիրելեացն ։ Գ. ձայն տուն ։ 166 ։

Չնի Օրթի

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մարկոսի ։ ԺԴ. 27 ։

Վասն չարչարանաց Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ։

Եւ ասէ ցնոսա Յիսուս . ամենեքին գայթագղելոց էք
յինէն յայսմ գիշերի . զի գրեալ է, թէ հարից զհովիւն

*և ոչխարքն ցրուեսցին ։ Այլ յետ յարութեան իմոյ յա-
ռաջագոյն երթայց քան զձեզ ի Գալիլեա ։ Պատասխանի
ետ Պետրոս և ասէ ցնա . Թէպէտ և ամենեքեան գայ-
թագղեսցին , այլ ես ոչ ։ Եւ ասէ ցնա Յիսուս . ամէն
ասեմ քեզ , թէ դու իսկ յայսմ գիշերի՝ մինչ չև հաւու
խօսեալ իցէ՝ երիցս ուրասցիս զիս ։ Իսկ Պետրոս առա-
ւել ևս պնդէր և ասէր . եթէ մեռանել ևս հասանիցէ
ընդ քեզ՝ զքեզ ոչ ուրացայց ։ Նոյնպէս և ամենեքեան
ասէին ։ Գայ ի գեօղն՝ որում անուն էր Գեթսեմանի . և
ասէ ցաշակերտսն . Նստարուք աստ՝ մինչև ես յաղօթս
կացից ։ Եւ առնու ընդ իւր զՊետրոս և զՅակովբոս և
զՅովհաննէս , և սկսաւ տխրել և հոգալ ։ Յայնժամ ասէ
ցնոսա . տրտում է անձն իմ մինչև ի մահ , մնացէք աստ
և արթուն կացէք ։ Եւ մատուցեալ սակաւիկ մի յառաջ ,
անկաւ ի վերայ երեսաց իւրոց յերկիր . և կայր յաղօ-
թըս , զի եթէ հնար ինչ է՝ անցցէ ի նմանէ ժամն . և
ասէ . աբբա Հայր , ամենայն ինչ քեզ հնարաւոր է , ան-
ցո զբաժակս զայս յինէն . բայց ոչ որպէս ես կամիմ՝
այլ որպէս դու կամիս ։ Եւ գայ գտանէ զնոսա զի նըն-
ջէին , և ասէ ցՊետրոս . Սիմոն , ննջե՞ս . ո՞չ կարացեր
ժամ մի արթուն կալ ։ Արթուն կացէք և յաղօթս կա-
ցէք , զի մի՛ մտջիք ի փորձութիւն . ոգիս յօժար է՝ բայց
մարմինս տկար ։ Եւ դարձեալ չոքաւ եկաց յաղօթս , և
զնոյն բանս ասաց ։ Դարձաւ միւսանգամ անդրէն՝ և ե-
գիտ զնոսա ի քուն . քանզի էին աչք նոցա ծանրացեալ՝
և ոչ գիտէին թէ զի՛նչ պատասխանի տայցեն նմա ։ Գայ
երրորդ անգամ , և ասէ ցնոսա . Ննջեցէք այսուհետև և
հանգերուք , զի հասեալ է վախճան . եկն ժամ , և ահա
մատնի որդի մարդոյ ի ձեռս մեղաւորաց . ո՛ն արիք
գնասցուք , զի ահաւասիկ մերձեցաւ որ մատնելոցն է
զիս ։ Եւ մինչդեռ նա զայն խօսէր , գայ Յուդա Սկա-
րիովտացի՝ մի յերկոտասանից անտի , և ընդ նմա ամ-
բոխ սուսերօք և բրօք՝ ի քահանայապետից և ի դպրաց
և ի ծերոց ։ Տուեալ էր նշան մատնչին՝ և ասէր . ընդ
որում ես համբուրեցից՝ նա է , կալջիք զնա և տարջիք
զգուշութեամբ ։ Եւ մատուցեալ վաղվաղակի ասէ ցնա .
ռաբբի ռաբբի . և համբուրեաց զնա ։ Եւ նոքա արկին
ի նա ձեռս՝ և կալան զնա ։ Եւ մի ոմն յայնցանէ որ ըզ-
նովաւն կային՝ ձգեաց սուր , և եհար զծառայ քահանա-*

Digitized by Google

յապետին, և ի բաց եհան զունկն նորա։ Պատասխանի ետ Յիսուս՝ և ասէ ցնոսա. իբրև ի վերայ աւազակի ելէք սուսերօք և բրօք՝ ունել զիս։ Հանապազ առ ձեզ էի՝ և ուսուցանէի ի տաճարին, և ոչ կալարուք զիս. այլ զի՛ լցցին գիրք մարգարէիցն։ Յայնժամ թողին ըզնա աշակերտքն ամենեքին և փախեան։ Եւ ոմն երիտասարդ զհետ երթայր նորա՝ արկեալ զիւրև կտաւ մի ի մերկուց. ունէին զնա երիտասարդքն, և նորա թողեալ զկտաւն՝ փախեաւ մերկ ի նոցանէ։ Եւ տարան զՅիսուս առ քահանայապետն Կայիափա. և գային ընդ նմա ամենայն քահանայապետքն և դպիրք և ծերք։ Եւ Պետրոս երթայր ի հեռաստանէ զհետ նորա՝ մինչև ի ներքըս իսկ ի գաւիթ քահանայապետին, և նստէր ընդ ըսպասաւորսն և ջեռնոյր առ լուսովն։ Իսկ քահանայապետքըն և ամենայն ատեանն խնդրէին հակառակ Յիսուսի վկայութիւն ինչ, զի սպանանիցեն զնա, և ոչ գտանէին. զի բազում սուտ վկայութիւն վկայէին զնմանէ, և նըման միմեանց ոչ էին վկայութիւնքն։ Այլք յարուցեալ վկայէին սուտ զնմանէ և ասէին, թէ մեք լուաք ի դմանէ զի ասէր. ես քակեցից զտաճարդ զայդ ձեռագործ, և զերիս աւուրս շինեցից այլ՝ առանց ձեռագործի։ Սակայն և այնպէս չէր նման վկայութիւնն նոցա։ Ապա յարուցեալ քահանայապետն ի մէջ՝ հարցանէր զՅիսուս և ասէր. ո՞չ ինչ տաս պատասխանի, զի՞նչ դոքա զքէն վկայեն։ Եւ նա լուռ ևեթ կայր և չտայր ինչ պատասխանի։ Դարձեալ քահանայապետն հարցանէր զնա կըրկին անգամ և ասէր. դո՞ւ ես Քրիստոս Որդի Աստուծոյ օրհնելոյն։ Պատասխանի ետ Յիսուս և ասէ ցնա. դու ասացեր թէ ես եմ. բայց տեսանիցէք զորդի մարդոյ նստեալ ընդ աջմէ զօրութեան, և եկեալ ընդ ամպս երկնից։ Եւ քահանայապետն պատառեաց վաղվաղակի ըզպատմուճանս իւր և ասէ. զի՞նչ ևս պիտոյ են մեզ վըկայք, ահա լուայք ամենեքին զհայհոյութիւն ի բերանոյ դորա. զի՞նչ թուի ձեզ։ Եւ ամենեքեան դատապարտեցին զնա՝ թէ մահապարտ է։ Եւ ոմանք սկսան թըքանել ընդ երեսս նորա, ձորձ զգլխով արկանել՝ կափել և ասել. մարգարեաց մեզ Քրիստոսդ, ո՞վ է այն որ եհարն զքեզ։ Եւ սպասաւորքն ապտակս հանէին նմա։ Եւ Պետրոս մինչդեռ էր ի խոնարհ ի գաւթին՝ գայ աղախին

Digitized by Google

մի քահանայապետին, և տեսանէ զնա զի ջեռնոյր․ հայեցաւ ընդ նա և ասէ․ և դու ընդ Յիսուսի Նազովրեցւոյ էիր։ Նա ուրացաւ և ասէ․ ոչ ճանաչեմ, և ոչ գիտեմ զինչ դուդ ասես․ և իբրև ել յարտաքին գաւիթըն, և հաւ խօսեցաւ։ Դարձեալ ետես զնա աղախինն, և սկսաւ ասել ցայնոսիկ որ շուրջն կային, թէ և սա ի նոցանէ է․ և նա դարձեալ ուրացաւ։ Եւ յետ սակաւ միոյ՝ դարձեալ որ շուրջն կային ասեն ցՊետրոս․ արդարև և դու ի նոցանէ ես, քանզի գալիլեացի ես, և խօսքդ իսկ քո նման են։ Եւ սկսաւ նզովել՝ երդնուլ և ասել, թէ ոչ գիտեմ զայրն զորմէ դուքդ ասէք․ և նոյն ժամայն կրկին հաւ խօսեցաւ։ Եւ յիշեաց Պետրոս զբանն զոր ասաց ցնա Յիսուս, թէ չև իցէ հաւու երկիցս խօսեալ՝ զի դու երիցս ուրասցիս զիս, և սկսաւ լալ։ 72։

Աղօթք հանդերձ ծունր դնելով զՏէր աղաչեսցուք։
Քահ․ Տէր ողորմեա։ Երիցս երգեա։
Քար․ Եւ ևս խաղ։ Քահ․ Օրհնութիւն և փառք։

ՍԱՂՄՈՍ ՀԸ

Աստուած, մտին հեթանոսք ի ժառանգութիւն քո, պղծեցին զտաճար սուրբ քո։

Արարին զԵրուսաղէմ որպէս հիւղս մրգապահաց․ արկին զդիակունս ծառայից քոց՝ գէշ թռչնոց երկնից, և զմարմինս սրբոց քոց գազանաց երկրի։

Հեղին զարիւնս նոցա որպէս զջուր շուրջ զԵրուսաղեմաւ, և ոչ ոք էր որ թաղէր զնոսա։

Եղաք մեք նախատինք դրացեաց մերոց, ծաղր և այպն կատականաց այնոցիկ որ շուրջ էին զմեօք։

Մինչև յե՞րբ Տէր բարկանաս դու իսպառ, բորբոքեսցի որպէս հուր նախանձ քո։

Հեղ զբարկութիւն քո ի վերայ ազգաց որ զքեզ ոչ ճանաչիցեն, ի վերայ թագաւորաց որ զանուն քո ոչ կարդացին․ զի կերան զՅակոբ և զտեղի նորա աւերեցին։

Մի՛ յիշեր զմեղս մեր զառաջինս, վաղվաղ եկեսցէ առ մեզ ողորմութիւն քո Տէր, զի աղքատացաք յոյժ։

Օգնեա մեզ Աստուած փրկիչ մեր, վասն մեծի փառաց անուան քո։

Տէր փրկեա զմեզ և քաւեա զմեղս մեր, վասն անուան քո։

Digitized by Google

*Մի՛ երբեք՝ ասասցեն ի հեթանոսս, թէ ուր է Աստուած նոցա ։*

*Այլ յայտնի լիցի ի վերայ հեթանոսաց առաջի աչաց մերոց, առ ի խնդրել զվրէժ արեան ծառայից քոց որ հեղաւ ։*

*Մտցէ առաջի քո հեծութիւն կապելոց. ըստ մեծութեան բազկի քո չահեա դու զորդիս սպանելոց ։*

*Հատո դրացեաց մերոց եօթնպատիկ ի ծոց նոցա, նախատինս զոր նախատեցին զքեզ Տէր ։*

*Մեք ժողովուրդք և խաշն արօտի քո խոստովան եղիցուք առ քեզ յաւիտեան, ազգէ յազգ պատմեսցուք զօրհնութիւնս քո ։*

ՍԱՂՄՈՍ ՀԹ

*Ո հովուեսդ Իսրայելի՛ նայեաց, որ առաջնորդես որպէս խաշին Յովսեփու ։*

*Որ նստիսդ ի քրովբէս՝ յայտնեա առաջի Եփրեմի, Բենիամինի և Մանասէի ։*

*Զարթո զզօրութիւն քո, և եկ կեցուցանել զմեզ ։*

*Աստուած զօրութեանց, դարձո զմեզ, երևեցո զերեսս քո ի մեզ և կեցցուք ։*

*Տէր Աստուած զօրութեանց, մինչև յերբ բարկանաս յաղօթս ծառայից քոց ։*

*Ջամբեցեր մեզ հաց արտասուաց, և արբուցեր մեզ արտասուս չափով ։*

*Արարեր զմեզ նախատինս դրացեաց մերոց, այպն կատականաց թշնամեաց մերոց ։*

*Աստուած զօրութեանց, դարձո զմեզ, երևեցո զերեսս քո ի մեզ և կեցցուք ։*

*Այգի յԵգիպտոսէ փոխեցեր, հաներ զհեթանոսս և զնոսա տնկեցեր, և առաջնորդեցեր նմա ։*

*Հաստատեցեր զարմատս նորա և ելից զերկիր. ծածկեաց զլերինս հովանի նորա, և բարունակ նորա զմայրս Աստուծոյ ։*

*Ձգեաց զորթ իւր մինչև ի ծով, մինչև ի գետս են շառաւիղք նորա ։*

*Ընդէ՞ր քակեցեր զցանգ նորա, կթեն զնա անցաւորք ճանապարհի ։*

*Ապականեաց զնա խոզ անտառի, և երէ վայրի արածեցաւ ի նմա ։*

Digitized by Google

Աստուած զօրութեանց, դարձ հայեաց յերկնից և տես, այց արա այգւոյս այսմիկ և դարման տար սմա զոր տնկեաց աջ քո։

Ի վերայ որդւոյ մարդոյ՝ զոր զօրացուցեր զնա ի քեզ, այրեցեալ ի հուր և աւերեալ, ի սաստէ քումմէ կորիցեն։

Եղիցի ձեռն քո ի վերայ առն, աջ քո ի վերայ որդւոյ մարդոյ՝ զոր զօրացուցեր զնա ի քեզ։

Ոչ ևս ի բացեայ եղիցուք մեք ի քէն. կեցուսցես դու զմեզ, և զանուն քո Տէր կարդասցուք։

Աստուած զօրութեանց, դարձո զմեզ, երևեցո զերեսս քո ի մեզ և կեցցուք։

ՍԱՂՄՈՍ Ձ

Ցնծացէք առ Աստուած օգնական է մեր, աղաղակեցէք առ Աստուած Յակովբայ։

Առէք սաղմոս և տուք օրհնութիւն, սաղմոս ասացէք նմա ի ձայն քաղցրութեան։

Փող հարէք ի գլուխս ամսոց, յաւուր նշանաւորի տարեկանաց մերոց։

Հրաման է այս Իսրայէլի, և իրաւունք են Աստուծոյ Յակովբայ։

Վկայութիւն Յովսեփու զոր եդ ընդ նմա. որպէս ելանէր նա յերկրէն Եգիպտացւոց, լեզու զոր ոչ գիտէր լուաւ։

Ի բաց արար ի բեռանց զթիկունս նորա, և զձեռս նորա յորթ և ի թի ծառայելոյ։

Ի նեղութեան կարդացեր առ իս և փրկեցի զքեզ, լուայ քեզ ի գաղտնութենէ մրրկին, և փորձեցի զքեզ ի վերայ ջուրցն հակառակութեան։

Լուր ժողովուրդ իմ, և վկայեմ քեզ, և Իսրայէլ՝ թէ լուիցես ինձ։

Մի՛ ևս եղիցին քեզ աստուածք առժամայնք, և մի՛ երկիրպագանիցես դու աստուծոյ օտարի։

Ես եմ Տէր Աստուած քո՝ որ հանի զքեզ յերկրէն Եգիպտացւոց, բաց զբերան քո և լցից զդա։

Ժողովուրդ իմ ոչ լուաւ ձայնի իմում, և Իսրայէլ յիս ինչ ոչ նայեցաւ։

Բարձի թողի զնոսա երթալ զհետ կամաց սրտից իւրեանց, զի գնացին նոքա ըստ կամս անձանց իւրեանց։

Զի թէ ժողովրդեան իմոյ լուեալ էր ինձ, կամ Իսրայէլի զճանապարհս իմ գնացեալ էր։

Digitized by Google

Որպէս զոչինչ խոնարհ արտաքեալ էր իմ զթշնամիս նորա, ի վերայ նեղչաց նորա արկեալ էր զձեռն իմ։

Թշնամիք Տեառն ստեցին նմա, և եղիցին ժամանակք նոցա յաշխարհի։

Կերակրեաց զնոսա ի պարարտութենէ ցորենոյ, ի վիմէ մեղր յագեցոյց ի նոսա։

Կցուրդ

Նոքա ի ձեռանէ քումմէ մերժեցան. մեք ժողովուրդք եւ խաշն արօտի քո։

Երեք անգամ կրկնեա, և շարականն բարձր ասա։

ՇԱՐԱԿԱՆ ԴԿ

Ճառագայթ փառաց էին որ։ Դ. ձյց տուն։ 167։

Ջհնէ Օրթի

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի։ ԻԶ. 31։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Յայնժամ ասէ ցնոսա. ամենեքին դուք գայթագղելոց էք յինէն յայսմ գիշերի. զի գրեալ է՝ թէ հարից զհովիւն՝ և ցրուեսցին ոչխարք հօտին։ Եւ յետ յառնելոյն իմոյ յառաջեցից քան զձեզ ի Գալիլեա։ Պատասխանի ետ Պետրոս և ասէ ցնա. թէպէտ և ամենեքեան գայթագղեսցին ի քէն, սակայն ես ոչ գայթագղեցայց։ Ասէ ցնա Յիսուս. ամէն ասեմ քեզ, զի յայսմ գիշերի՝ մինչ չև հաւու խօսեալ իցէ, երիցս ուրասցիս զիս։ Ասէ ցնա Պետրոս. թէ և մեռանել հասանիցէ ընդ քեզ, ըզքեզ ոչ ուրացայց։ Նոյնպէս և ամենայն աշակերտքն ասէին։ Յայնժամ գայ Յիսուս ընդ նոսա ի գեօղ մի՝ որում անուն էր Գեթսեմանի, և ասէ ցնոսա. նստարուք այդր՝ մինչև երթայց կացից յաղօթս։ Եւ առեալ ընդ իւր զՊետրոս և զերկուս որդիսն Զեբեդեայ, սկսաւ տրտմել և հոգալ։ Յայնժամ ասէ ցնոսա. տրտում է ոգի իմ մինչև ի մահ, կացէք աստ՝ և սկեցէք ընդ իս։ Եւ մատուցեալ յառաջ սակաւիկ մի՝ անկաւ ի վերայ երեսաց իւրոց, կաց յաղօթս՝ և ասէ. Հայր իմ, եթէ հնար է՝ անցցէ բաժակս այս յինէն. բայց ոչ որպէս ես կամիմ, այլ որպէս դու։ Գայ առ աշակերտսն, և գտանէ զնոսա ի քուն, և ասէ ցՊետրոս. այդպէս ո՞չ կարացէք մի ժամ արթուն կալ ընդ իս. արթուն կացէք և աղօթս արա-

Digitized by Google

րէք՝ զի մի՛ անկանիցիք ի փորձութիւն. հոգիս յօժար է, բայց մարմինս տկար։ Դարձեալ երկրորդ անգամ չոգաւ եկաց յաղօթս Յիսուս՝ և ասէ. Հայր իմ, եթէ հնար իցէ անցանել յինէն բաժակիս այսմիկ, ապա թէ ոչ՝ արբից զսա, եղիցին կամք քո։ Եւ եկեալ միւսանգամ եգիտ զնոսա ի քուն, զի էին աչք իւրեանց ծանրացեալք։ Եթող զնոսա՝ և գնաց կաց յաղօթս երրորդ անգամ, և դարձեալ զնոյն բան ասաց։ Յայնժամ գայ առ աշակերտսն և ասէ ցնոսա. Ննջեցէք այսուհետև և հանգերուք. զի ահա հասեալ է ժամ, և որդի մարդոյ մատնի ի ձեռս մեղաւորաց. արիք երթիցուք աստի, զի ահաւասիկ եհաս որ մատնելոց է զիս։ Եւ մինչդեռ նա զայն խօսէր, ահա Յուդա՝ մի յերկոտասանիցն եկն, և ընդ նմա ամբոխ բազում՝ սրովք և բրօք՝ ի քահանայապետիցն և ի ծերոց ժողովրդեանն։ Եւ որ մատնելոցն էր զնա՝ ետ նոցա նշան և ասէ. ընդ որում ես համբուրեցից՝ նա է, զնա ունիցիք։ Եւ վաղվաղակի մատուցեալ առ Յիսուս ասէ. ողջ եր վարդապետ. և համբուրեաց ընդ նմա։ Եւ Յիսուս ասէ ցնա. ընկեր, վասն որոյ եկիրդ։ Յայնժամ մատուցեալ արկին ձեռս ի Յիսուս և կալան զնա։ Եւ ահա մի ոմն յայնցանէ՝ որ էին ընդ Յիսուսի, ձգեաց զձեռն և եհան զսուր իւր՝ և եհար զծառայ քահանայապետին, և ի բաց եհան զունկն նորա։ Յայնժամ ասէ ցնա Յիսուս. դարձո զսուր քո ի տեղի իւր, զի ամենեքեան որ սուր առնուցուն՝ սրով անկանիցին։ Թէ համարիցիս՝ թէ ո՞չ կարիցեմ աղաչել զՀայր իմ, և հասուցանիցէ ինձ այժմ այսր՝ աւելի քան զերկոտասան գունդս հրեշտակաց։ Այլ զիա՞րդ լնուցուն գիրք՝ եթէ այսպէս պարտ է լինել։ Յայնժամ ասաց Յիսուս ցամբոխն. իբրև ի վերայ աւազակի ելէ՞ք սուսերօք և բրօք՝ ունել զիս. հանապազ առ ձեզ ի տաճարին նստէի և ուսուցանէի, և ոչ կալայք զիս։ Այլ այս ամենայն եղև՝ զի լցցին գիրք մարգարէիցն։ Յայնժամ աշակերտքն ամենեքին թողին զնա և փախեան։ 56։

Աղօթք հանդերձ ծունր դնելով զՏէր աղաչեսցուք։
Քահ. Տէր ողորմեա։ Երիցս հեղ։

Քոր. Եւ ևս խաղ։ Քահ. Օրհնութիւն և փառք։

ՍԱՂՄՈՍ ՃԸ

Աստուած օրհնութեան իմոյ մի՛ լռեր, զի բերան մեղաւորի բերան նենգաւորի բացաւ ի վերայ իմ։

Digitized by Google

Խօսեցան զինէն լեզուաւ նենգաւորաւ, և բանիւք ատելութեամբ պաշարեցին զիս ։

Մարտեան ընդ իս ի տարապարտուց, փոխանակ սիրոյ իմոյ մատնէին զիս, այլ ես յաղօթս կայի ։

Հատուցին ինձ չար փոխանակ ընդ բարւոյ, ատելութիւն փոխանակ սիրոյ իմոյ ։

Կացո ի վերայ նորա մեղաւոր, սատանայ կացցէ ընդ աջմէ նորա ։

Ի դատաստանէ իւրմէ ելցէ դատապարտեալ, և աղօթք նորա ի մեղս դարձցին ։

Եղիցին աւուրք նորա նուազ, և զայցելութիւն նորա՛ զայն այլ տարցի ։

Եղիցին որդիք նորա որբ և կին նորա այրի. սահեսցին փոփոխեսցին, որդիք նորա մուրօղք եղիցին, և ելցեն ի բնակութենէ իւրեանց ։

Քննեսցէ փոխատու զամենայն ինչս նորա, յափշտակեսցեն օտարք զվաստակս նորա ։

Մի՛ գտցի ոք օգնական նմա, և մի՛ ոք ողորմեսցի ի վերայ որբոց նորա ։

Եղիցին որդիք նորա ի սատակումն, և յազգէ ջնջեսցի անուն նորա ։

Յիշեսցին մեղք հօր նորա առաջի Տեառն, և մեղք մօր նորա մի՛ ջնջեսցին, և եղիցին առաջի Տեառն յամենայն ժամ ։

Սատակեսցի յերկրէ յիշատակ նորա, փոխանակ զի ոչ յիշեաց առնել զողորմութիւն ։

Հալածեաց զայր աղքատ և զտնանկ, սպանանել զայն որ խոնարհ է սրտիւ ։

Սիրեաց զանէծս՛ և ելցէ նմա. ոչ կամեցաւ զօրհնութիւն, հեռի եղիցի ի նմանէ ։

Զգեցաւ զանէծս որպէս հանդերձ, մտցէ որպէս ջուր ի փոր նորա, որպէս ձէթ ընդ ոսկերս նորա ։

Եղիցի նմա որպէս հանդերձ զի ագանի, որպէս գօտի որ ածի հանապազ ընդ մէջ ։

Այս գործ է այնոցիկ որ չարախօս կային զինէն առ Տէր, և ոյք խօսէին չար զանձնէ իմմէ ։

Այլ դու Տէր Տէր արա ընդ իս ըստ անուան քում ; զի քաղցր է ողորմութիւն քո, և փրկեա զիս, զի աղքատ և տնանկ եմ ես ։

Digitized by Google

Սիրտ իմ խռովեցաւ ի փորի իմում, և ես որպէս ըս-
տուեր ի խուսափել իմում պակասեցայ, և թօթափեցայ
որպէս մարախ ։

Ծունկք իմ տկարացան ի պահոց, և մարմին իմ այ-
լագունեաց յիւղոյ ։

Եղէ ես նախատ նոցա, տեսին զիս և շարժեցին ըզ-
գլուխս իւրեանց ։

Օգնեա ինձ Տէր Աստուած իմ, և փրկեա զիս ըստ
ողորմութեան քում ։

Ծանիցեն զի ձեռն քո այս է, և դու Տէր արարեր
զայս ։

՛Նոքա անիծանեն և դու օրհնեսցես. ոյք յարուցեալ
են ի վերայ իմ՝ ամօթ կրեսցեն, այլ ծառայ քո ուրախ
եղիցի ի քեզ ։

Զգեցցին զամօթ որ չարախօս կային զանձնէ իմմէ,
և արկցեն որպէս կրկնոց զամօթ իւրեանց զիւրեամբք ։

Այլ ես խոստովան եղէց առ Տէր յոյժ բերանով ի-
մով, ի մէջ բազմաց օրհնեցից զքեզ ։

Զի եկաց նա ընդ աջմէ տնանկիս, փրկել զիս յայն-
ցանէ ոյք հալածեն զանձն իմ ։

ՍԱՂՄՈՍ ՃԹ

Ասաց Տէր ցՏէր իմ, նիստ ընդ աջմէ իմմէ, մինչև
եդից զթշնամիս քո պատուանդան ոտից քոց ։

Գաւազան զօրութեան առաքեսցէ քեզ Տէր ի Սիովնէ,
և տիրեսցես դու ի մէջ թշնամեաց քոց ։

Ընդ քեզ է սկիզբն աւուրց զօրութեան, ի վայելչու-
թիւն սրբոց քոց յարգանդէ յառաջ քան զարուսեակ ծնայ
զքեզ ։

Երդուաւ Տէր և ոչ ևս զղջասցի, թէ դու ես քահա-
նայ յաւիտեան ըստ կարգին Մելքիսեդեկի, և Տէր ընդ
աջմէ քումմէ ։

Խորտակեսցէ յաւուր բարկութեան զթագաւորս. դատի
զհեթանոսս և բազում առնէ զհարուածս, և խորտա-
կեսցէ զգլուխս բազմաց յերկրի ։

Զուխս ի ճանապարհի արբուսցէ, վասն այնորիկ և
բարձր արասցէ զգլուխս ։

ՍԱՂՄՈՍ ՃԺ

Խոստովան եղէց քեզ Տէր բոլորով սրտիւ իմով, ի
խորհուրդս ուղղոց ի ժողովուրդս. մեծ են գործք Տեա-
ռըն, և քննեալ են յամենայնի կամք նորա ։

Digitized by Google

Խոստովանութիւն և վայելչութիւն են գործք նորա. արդարութիւն նորա մնայ յաւիտեանս յաւիտենից։

Յիշատակ արար սքանչելեաց իւրոց ողորմած գթած է Տէր, կերակուր տայ երկիւղածաց իւրոց։

Յիշեաց յաւիտենից զուխտ իւր, զզօրութիւն գործոց իւրոց պատուիրեաց ժողովրդեան իւրում։

Տալ նոցա զժառանգութիւն հեթանոսաց, և գործք ձեռաց նորա արդարութիւն և իրաւունք են։

Հաւատարիմ են յամենայնի պատուիրանք նորա, հաստատեալ են յաւիտեանս յաւիտենից, արարեալ են ճշմարտութեամբ և ուղղութեամբ։

Փրկութիւն առաքեաց Տէր ժողովրդեան իւրում, պատուիրեաց յաւիտենից զուխտ իւր. սուրբ և ահեղ է անուն նորա։

Սկիզբն զգօնութեան երկիւղ Տեառն, իմաստութիւն բարի ամենեցուն որ առնեն զնա, և օրհնութիւն նորա մնայ յաւիտեանս յաւիտենից։

Կցուրդ

Խօսեցան զինէն լեզուաւ նենգաւորաւ. և բանիւ ատելութեան զիս պաշարեցին։

Երիցս անգամ կրկնեա, և շարականն թարգմ— ։

ՇԱՐԱԿԱՆ ԴԿ

Զար կապանաց մարդկան լուծիչ։ Ն. Մեց տօն։ 168։

## Զկնի Օրթի

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի։ ԻԶ. 57։

Վասն չարչարանաց Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։

Իսկ նոցա կալեալ զՅիսուս՝ ածին առ Կայիափա քահանայապետ՝ ուր դպիրքն և ծերք ժողովեալ էին։ Եւ Պետրոս զհետ նորա երթայր բացագոյն մինչև ի սրահ քահանայապետին. և մտեալ ի ներքս նստէր ընդ սպասաւորսն տեսանել զկատարածն։ Իսկ քահանայապետքն և ամենայն ատեանն խնդրէին սուտ վկայութիւն զՅիսուսէ, զի սպանանիցեն զնա. և ոչ գտանէին ի բազմաց սուտ վկայիցն մատուցելոց։ Յետոյ մատուցեալ երկու սուտ վկայք՝ ասէին, թէ սա ասէր՝ կարող եմ քակել զտաճարըն Աստուծոյ, և զերիս աւուրս շինել։ Եւ յարուցեալ

քահանայապետն ասէ ցնա. չասա՞ս ինչ պատասխանի, զինչ դոքա ամբաստանեն զքէն։ Եւ Յիսուս լուռ կայր։ Պատասխանի ետ քահանայապետն և ասէ ցնա. երդմնեցուցանեմ զքեզ յԱստուած կենդանի, զի ասասցես մեզ՝ թէ դո՞ւ ես Քրիստոսն Որդի Աստուծոյ։ Ասէ ցնա Յիսուս. դու ասացեր. բայց ասեմ ձեզ, յայսմ հետէ տեսանիցէք զՈրդի մարդոյ նստեալ ընդ աջմէ զօրութեանն՝ և եկեալ ընդ ամպս երկնից։ Յայնժամ քահանայապետն պատառեաց զհանդերձս իւր, և ասէ. հայհոյեաց. զի՞ ևս պիտոյ են մեզ վկայք, ահա արդ լուայք զհայհոյութիւն դորա. զինչ հաճոյ է ձեզ։ Նոքա պատասխանի ետուն և ասեն. մահապարտ է։ Յայնժամ թքին ընդ երեսս նորա, և կափեցին զնա. և ոմանք ապտակեցին, և ասեն. մարգարեաց մեզ Քրիստոսդ, ո՞վ է՝ որ եհարն զքեզ։ Իսկ Պետրոս նստէր արտաքոյ ի գաւթին. մատեաւ առ նա աղախին մի և ասէ. և դու ընդ Յիսուսի Գալիլեացւոյ էիր։ Նա ուրացաւ առաջի ամենեցուն և ասէ, թէ ոչ գիտեմ զինչ խօսիսդ։ Եւ իբրև ել նա արտաքս քան զդուռնն՝ ետես զնա այլ կին մի, և ասէ ցայնոսիկ որ անդն կային. և սա ընդ Յիսուսի Նազովրացւոյ էր։ Եւ դարձեալ ուրացաւ երդմամբ, թէ ոչ գիտեմ զայրն։ Եւ յետ սակաւ միոյ մատուցեալ որք կային անդ՝ ասեն ցՊետրոս. արդարև և դու ի նոցանէ ես, քանզի և խօսք քո յայտ առնեն զքեզ։ Յայնժամ սկսաւ նզովել և երդնուլ, թէ ոչ գիտեմ զայրն. և խակոյն հաւ խօսեցաւ։ Եւ յիշեաց Պետրոս զբանն Յիսուսի զոր ասաց, թէ մինչ չև հաւու խօսեալ իցէ՝ երիցս ուրասցիս զիս. և ելեալ արտաքս ելաց դառնապէս։ 75։

Աղօթք հանդերձ ծունր դնելով զՏէր աղաչեսցուք։
Քահ. Տէր ողորմեա։ Երեքս կրկնեա։

Քար. Եւ ևս խաղ։ Քահ. Օրհնութիւն և փառք։

ՍԱՂՄՈՍ ճԺԷ

Խոստովան եղերուք Տեառն, զի բարի է զի։ 331։

Կցորդ

Խոստովան եղերուք Տեառն զի բարի է. զի յաւիտեան է ողորմութիւն նորա։

Երեք անգամ կրկնեա, և զյետինն բարձր ասա։

Digitized by Google

## ՇԱՐԱԿԱՆ ԴԿ

Տարածեալ ձեռք ընդ ձեռաց։ Զ. վեց տուն։ 169։

Ջնջէ Օրթի. է բէմ նորդ։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Յովհաննու։ ԺԸ. 2։
վասն չարչարանաց Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։

Գիտէր և Յուդա՝ որ զնա մատնելոց էր՝ զտեղին. զի բազում անգամ ժողովեալ էր անդր Յիսուսի աշակերտօքն հանդերձ։ Եւ Յուդայի առեալ ընդ իւր զգունդն, և ի քահանայապետիցն և ի փարիսեցւոց սպասաւորս, գայ անդր ջահիւք և լապտերօք և զինուք։ Իսկ Յիսուս իբրև ետես զայն ամենայն եկեալ ի վերայ նորա, ել և ասէ ցնոսա. զո՞ խնդրէք։ Պատասխանի ետուն նմա. զՅիսուս Նազովրեցի։ Ասէ ցնոսա Յիսուս. ես եմ։ Կայր ընդ նոսա և Յուդա՝ որ մատնէրն զնա։ Իբրև ասաց՝ թէ ես եմ, յետս յետս չոգան՝ և զարկան զգետնի։ Դարձեալ եհարց զնոսա. զո՞ խնդրէք։ Եւ նոքա ասեն. զՅիսուս Նազովրեցի։ Պատասխանի ետ նոցա Յիսուս. ասացի ձեզ թէ ես եմ. արդ եթէ զիս խնդրէք, թոյլ տուք դոցա երթալ։ Զի լցցի բանն՝ զոր ասաց, թէ զորս ետուրն ցիս՝ ոչ կորուսի ի նոցանէ և ոչ զոք։ Իսկ Սիմովն Պետրոս՝ քանզի ունէր սուր, ձգեաց զնա և եհար զքահանայապետին ծառայ, և ի բաց առ զունկն նորա զաջոյ. և էր անուն ծառային Մաղքոս։ Ասէ Յիսուս ցՊետրոս. արկ զսուրդ անդրէն ի պատեանս իւր. զբաժակն զոր ետ ինձ Հայր՝ ո՞չ ըմպիցեմ զնա։ Իսկ գունդն և հազարապետն և սպասաւորք Հրէիցն կալան զՅիսուս և կապեցին։ Եւ ածին զնա նախ առ Աննա, որ էր աներ Կայիափայի, որ քահանայապետն էր տարւոյն այնորիկ։ Այս այն Կայիափա էր՝ որ խրատն ետ Հրէից, թէ լաւ է առն միում մեռանել ի վերայ ժողովրդեանն։ Եւ երթայր զհետ Յիսուսի Սիմովն Պետրոս և միւս աշակերտն։ Եւ աշակերտն այն քանզի ծանօթ էր քահանայապետին՝ եմուտ ընդ Յիսուսի ի գաւիթ քահանայապետին։ Եւ Պետրոս կայր առ դրանն արտաքոյ. ել միւս աշակերտն՝ որ էր ծանօթ քահանայապետին, և ասաց ցդռնապանն՝ և եմոյծ ի ներքս զՊետրոս։ Ասէ աղջիկն որ դռնապանն էր՝ ցՊետրոս. միթէ և դու յաշակերտաց առնն այնորիկ իցես։ Եւ նա ասէ. ոչ եմ։

Digitized by Google

կային անդ ծառայքն և սպասաւորք, խարոյկ արկեալ՝ քանզի ցուրտ էր, և ջեռնուին. կայր ընդ նոսա և Պետրոս և ջեռնոյր։ Եւ քահանայապետն եհարց զՅիսուս վասն աշակերտացն և վասն վարդապետութեան նորա։ Պատասխանի ետ նմա Յիսուս. ես յայտնապէս խօսեցայ յաշխարհի, ես յամենայն ժամ ուսուցի ի ժողովրդեանն և ի տաճարի անդ՝ ուր ամենայն հրեայք ժողովեալ էին, և ի ծածուկ ինչ ոչ խօսեցայ։ Զի՞ հարցանես զիս, հարց զայնոսիկ՝ որ լուանն, թէ զինչ խօսեցայ ընդ նոսա. ահաւանիկ նոքա գիտեն զինչ ասացի ես։ Իբրև նա զայն ասաց, մի ոմն ի սպասաւորացն որ անդ կայր, ած ապտակ Յիսուսի և ասէ. ա՞յդպէս պատասխանի տաս քահանայապետին։ Եւ Յիսուս ասէ ցնա. եթէ չար ինչ խօսեցայ, վկայեա վասն չարին. իսկ եթէ բարի, ընդէ՞ր հարկանես զիս։ Եւ առաքեաց զնա Աննա կապեալ առ Կայիափա քահանայապետ։ Եւ Սիմոն Պետրոս կայր անդ և ջեռնոյր. ասեն ցնա. միթէ և դու յաշակերտաց անտի նորա իցես։ Նա ուրացաւ և ասէ, թէ չեմ։ Եւ ասէ մի ոմն ի ծառայից քահանայապետին՝ ազգական այնորիկ զորոյ զունկն եհատ Պետրոս. ո՞չ ես իսկ տեսի զքեզ ի պարտիզի անդ ընդ նմա։ Դարձեալ ուրացաւ Պետրոս, և վաղվաղակի հաւ խօսեցաւ։ 27։

Զկնի Մաղթ. Հոգւոցն հանգ։ Քար. Վասն հանգուցեալ։ Աղ. Քրիստոս որդի։ Հայր մեր։ Ողորմեա Քրիստոս։

Եւ ապա ԿԱՆՈՆԱԳԼՈՒԽ ԴԶ. Յայնժ.

Իշխանք հալածեցին զիս ի նանիր. ալէլուիա։

Զկնի Քար. Եւ ես խաղ։ Քահ. Օրհնութիւն։ Եւ ասեն

ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԲԶ

Արծաթսիրութեամբըն մոլեալ Յուդա. զՏէր ըզմեծ ըզվարդապետն ընդ երեսուն արծաթոյ հերեքիցըն մատնէր։ Ընդ որում ես համբուրեցից ասէ ըզնա կալարուք. ով համբոյր նենգութեան նշան և անլիթ մահու։ Մերկացաւ յինքենէ զաստուածային սուրբ Հոգին. և ըզգեցաւ ըզսատանայ որպէս հանդերձ արկաւ զիւրեաւ։

+ Ի գիշերին յորում մատնէր Փրկիչըն մեր ի մահ

խաչին եւ ի լեառն ձիթենեաց. աղօթելով զայս առէր Հայր անցո յինէն զբաժակս: Իսկ անօրէն աշակերտն թողեալ ըզգութ սիրոյ նորա. եւ փութայր առ քահանայսն առէր ինձ զինչ կամիք տալ զի մատնեցից ըզվարդապետն:

Որ նստիս ի քրովբէս Աստուած Բանդ. այսօր վասն մեր խոնարհութեամբ նստար ի լերինն ձիթենեաց. Օրհնեմք ըզքեզ անդադար երգով: Որ համագոյդ ես խորհրդոցն Հայրենի. աշակերտաց քոց ծանուցեր ըզխորհուրդ քո գալստեանն. օրհնեմք: Որ ամենայնից ես արարիչ եւ ստեղծիչ կենդանութեան. այսօր ըզծածկեալ խորհուրդ Երրորդութեանդ յայտնեցեր եկեղեցւոյ սրբոյ քո. օրհնեմք:

Ըզքեզ օրհնեմք որ բաշխօղդ ես բարութեանց. և հայցեմք որպէս ի մարդասիրէ. ընդ մօր քո ընտրելոցն զիմանալի աշխարհն: Զի դու ես Տէր յորմէ հայցէ մայրըն հաւատով հանգերձ որդւովք սրբեցելովք. ընդ աջմէ քո զփառս եւ յահեկէ. ընդ որս և մեք աղաչեմք զի դասեսցես ընդ սուրբս քո: Այլ դու բարձրեալ Փրկիչ որ վասն մեր խոնարհեցար. արժանի արա ըզմեզ ըմպել զբաժակ պատուիրանի կենաց քոց Տէր. որով կացցուք յաջմէ քումմէ ի հանդերձեալ քում գալըստեանն:

Հգ. Սարսափելի հողմոյ նման ահեղագոչ սաստիկ հընչմամբ. երեւեցար ի վերնատանն Հոգիդ դասուն երկոտասանն. որք առ ի քէն մըկրտեցան որպէս զոսկի հրով մաքրեցան. Մաքրեա ի մէնջ ըզմէգ մեղաց և ըզգեցո ըզլոյս փառաց: Եկիր յերկիր աստուածաբար զատել զաշխարհս իշխանաբար. ընդ արդարութեան և ընդ մեղաց և ընդ չարին դատաստանաց. բացեր ըզ-

զանձն աննիւթական պարգևս ետուր որդւոց մարդկան. մաւ՜ քրեա: Սէրն է սիրոյ զօրէգ մանկանց յինքըն զանգամս իւր քեւ յօղեաց. զեկեղեցի իւր զոր չինեաց եօթըն սեամբ քո հաստատեաց. տըննանա ի նմա եղ զանձեալսն եօթնեակ շնորհօք քո զարդարեաց. մաւ՜-քրեա:

ՀՆ. Թագաւոր անմահ արարիչ յաւիտենից. մարդասիրութեամբդ քո խընայեա յանձինս մեր. || ստեղծիչ կենդանեաց և հանգուցիչ ննջեցելոց: Ի խաչին բեւեռեցար զմահու լուծեր զիշխանութիւն. յաւիտենից ըզհընջեցեալսըն վերածեր յանմահ ի կեանս. ստեղծիչ: Արժանաւորաց քոց աղօթիւք յիշեա ըզմեր ըզհընջեցեալսն. յորժամ գայցես անճառ փառօք հատուցանել մարդկան ըստ գործս. եւ մեր ննջեցելոցըն շնորհեա դասել ընդ սուրբըս քո:

ՄԾ. Ըզքեզ կոյս և մայր և բնակարան աստուածային ներմարդութեանն. գոհաբանեմք և վերօրհնեմք զեղեալ փրկօղ կենդանութեան ազգի մարդկան. || վասն որոյ ըզքեզ Աստուածածին և կոյս. բարեբանեմք ըզմայր և զաղախին Փրկչին մերոյ: Ծնունդըն Հօր և հինաւուրց անժամանակն յաւիտենից. ժամանակաւ յորովայնի քում բնակեցաւ և ի Հօրէ ոչ մեկնեցաւ. վասն որոյ: Ծնեալն ի քէն ի խաչ ելեալ եւ ի յաթոռ փառաց ընդ Հօր. անբաժանեալ ի մարդկայնէ փառաւորութեամբ էութեամբ երկրպագեալ. վասն որոյ: Ըզքեզ ոչ միայն որդիք մարդկան այլ եւ վերին զօրութիւնք. դասք անմարմնոց հոգեղինաց հրեղինաց զուարթնոց եւ հրեշտակաց. գոհաբանեն և վերօրհնեն եւ փառաւորեն ըզմայր և զաղախին Փրկչին մերոյ:

ԽՉ. Ապաւինեցաք ի խաչ քո արարիչ յաւիտենից.

որ ետուր մեզ պաշտպան յաղթող ընդդէմ թշնամւոյն.
Աղաչեմք տուիչ փրկիչ պահպանեա զանձինս մեր։
Բարձրեալ թագաւոր որ վասն մեր եկեր ի խաչ. եւ
բարձեր տուիչ զյանցանս նախաստեղծին Ադամայ.
Աղաչեմք։ Գլուխ սուրբ հաւատոյ և փայտ կենաց մարդ-
կան յայտնեալ. զոր տեսեալ այսոյն պղծոյ կործանե-
ցաւ անկանգնելի. Աղաչեմք։ Դողացաւ թշնամին ընդ
յայտնել սորին խաչին. եւ ի յանձէ փառաց նորա կոր-
ծանեցաւ յանդունդս երկրի. Աղաչեմք։ — Փառք Հօր։
Երկինք ցնծային և երկիր ուրախանայր. քանզի
փրկիչ ցուցաւ սուրբ խաչն և լուսատու տիեզերաց.
Աղաչեմք։

— Այժմ և միշտ։ Ժողովեալ հրէիցն կշռեցին
արծաթ բազում. տուեալ տարան առ Պիղատոս ասեն ի
խաչ հան ի խաչ զի հայհոյիչ է օրինաց։

Մաղթանք. Փառք հրաշափառ չարչարանաց քոց Տէր։
Ալէլուիա. Առաջ ոտքանին. Զարթեաւ աղեղն քո։

---

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

### ՀԱՐՑ ԳՁ

Իջեր յերկնից անքննելիդ Որդի. ի հողեղէն ի
բնութենէ մարդկան զչարչարանս յանձն առեր.
Օրհնեմք ըզքեզ որ էիր յառաջ քան զամենայն յաւի-
տեանս։ Որ ասացեր բանիւ լինել ամենայն երկրի. ի
յերկրի յատենի կացեալ տեսանէին արարածք. Օրհ-
նեմք։ Ցորմէ դողան զաւրութիւնք երկնից. այսօր ե-
կեր կամաւ ի խաչ գեղարդեամբըն խոցեցար. Օրհնեմք։

Գ. ԸզՏէր օրհնեցէք Բարձր ամբարձէք յաւիտեան։
Եւ զինուորըն գեղարդեամբըն յարձակեալ. խոցեաց
զկող կենարարին բարձր։ Ուստի աղբիւր կենդանարար
բղխեալ. լուանայ զտիեզերս ի մեղաց. բարձր։

ՄԵԾԱՑՈՒՑԷ ԳԶ

Լոյս լուսոյ մայր. եւ կենարար Բանին բնակարան. Քեզ երանեսցեն ազգ եւ ազինք ամենայն։ Ստեղծողին մայր. եւ հընութեան կերպի նորոգողին. քեզ։ Լոյս ծագեցաւ ի քէն. Նըստելոցս ի խաւարամածս. քեզ։

ՈՂՈՐՄԵԱ ԳԶ

Եկեալ ի փրկութիւն ազգի մարդկան. ի ծառայէ յանձն առնու մատնիլ ի դատաստան. Համբերելով վասն ըզմեզ կեցուցանել։ Մատնեալ Պիղատոսի որպէս մահապարտ. ի յԱննայէ և ի Կայիափայ դատապարտեալ. համբերելով։ Կացեալ ի յատենի երկրորդ Ադամ. վասն առաջինն Ադամայ պարտեացըն թողութեան. համբերելով։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԳԶ

Ով ըսքանչելիք և տեսիլ ահաւոր. զարարիչն երկնի եւ երկրի այսօր տեսաք ի խաչի։ Տեսեալ ըզՏէրն ի խաչին խաւարեցաւ արեգակն. եւ վարագոյր տաճարին ցելոյր վերուստ մինչ ի վայր։ Անարգաբար խաչեցաւ Տէրն ի մէջ ի յանօրինաց. զի լըցցի գիրն որ ասէ թէ ընդ անօրէնըս համարեցաւ։

Յորժամ ասեն զՏէր յերկնից՝ Խորհրդականքն զմնացեալ մի մեծ մոմեղէնն, մինչև վերջ Փառք ի բարձունս։ Եւ ապա բերեալ վառեն զաւագ խորանի կանթեղն։

Առաւօտու երգ

Մատնեցայ և ոչ ելանէի. աչք իմ տկարացան յաղքատութենէ։

Աղաղակեցի առ Տէր զօրհանապազ. և համբարձի առ քեզ զձեռս իմ։

Քարոզ. Փառաւորեսցուք։

Digitized by Google

ՄԱՆԿՈՒՆՔ Բ՛Ձ.

Ո՛ր թագաւորդ ես թագաւորաց Քրիստոս ի ծառայէ՛ դատապարտեա՛լ․ համբերելով վասն մե՛ր․ Երկայնամի՛տ Տէ՛ր քե՛զ փառք։ Ո՛ր պատուական խաչիւդ քո Քրիստոս և սուրբ արեամբդ քո հեղմամբ․ կեցուցանել ըզմե՛զ կամեցա՛ր․ Երկայն։ Ո՛ր մարդասիրաբար վասն ամենեցուն ամենայնի՛ համբերեցե՛ր․ և ի մահու ըզմա՛հ կոխեցե՛ր․ Երկայնամի՛տ։

Քար․ Վասն խաղաղութեան։ Աղ․ Սուրբ ես Տէր։

Աղօ ՍԱՂՄՈՍ ԾԸ․ ողբաձայն․

Կց․ Փոխանակ սիրոյ իմոյ մատնէին զիս, այլ ես յաղօթս կայի։

Փխ․ Աստուած օրհնութեան իմոյ մի՛ լռեր։ 459։

Զկնի Օրթի

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Յովհաննու։ ԺԸ․ 28։

Վասն չարչարանաց Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։

Եւ ածեն զՅիսուս ի վանացն Կայիափայ յապարանս դատաւորին, և էր այգուց։ Եւ նոքա ոչ մտին յապարանսն, զի մի՛ պղծեսցին, այլ զի ուտիցեն զզատիկն։ Ել առ նոսա Պիղատոս արտաքս և ասէ․ զի՞նչ չարախօսութիւն մատուցանէք զառնէն զայնմանէ։ Պատասխանի ետուն և ասեն ցնա․ եթէ չէր չարագործ այրն այն, ապա ոչ մատնէաք զնա քեզ։ Ասէ ցնոսա Պիղատոս․ առէք զնա դուք, և ըստ ձերոց օրինացն դատեցարուք։ Ասեն ցնա հրեայքն․ մեզ ոչ է արժան սպանանել զոք։ Զի լցցի բանն Յիսուսի զոր ասաց, նշանակեալ թէ որով մահու մեռանելոց իցէ։ Եմուտ միւսանգամ յապարանսն Պիղատոս, կոչեաց զՅիսուս, և ասէ ցնա․ դո՞ւ ես թագաւորն հրէից։ Պատասխանի ետ Յիսուս․ ի քէ՞ն ասես զայդ, եթէ այլք ասացին քեզ զինէն։ Պատասխանի ետ Պիղատոս․ միթէ և ես հրեա՞յ իցեմ․ ազգն քո և քահանայապետք մատնեցին զքեզ ինձ․ զի՞նչ գործ գործեալ է քո։ Պատասխանի ետ Յիսուս․ իմ արքայութիւն չէ յայսմ աշխարհէ․ եթէ յաշխարհէ աստի էր արքայութիւնն իմ, սպասաւորքն իմ մարտնչէին արդեօք՝ զի մի՛ մատ-

Digitized by Google

նեցայց Հրէից. բայց արդ թագաւորութիւն իմ չէ աստի։ Ասէ ցնա Պիղատոս. ապա թէ այդպէս իցէ, թագաւոր ոմն ես դու։ Պատասխանի ետ Յիսուս. դու ասես՝ թէ թագաւոր իցեմ. բայց ես յայդ իսկ ծնեալ եմ, և ի դոյն իսկ եկեալ եմ յաշխարհ, զի վկայեցից ճշմարտութեանն. ամենայն որ ի ճշմարտութենէ է, լսէ բարբառոյ իմոյ։ Ասէ ցնա Պիղատոս. զի՞նչ է ճշմարտութիւն։ Զայս իբրև ասաց, դարձեալ ել առ Հրեայսն և ասէ ցնոսա. ես և ոչ մի ինչ պատճառս գտանեմ ի Նմա։ Բայց է ձեր սովորութիւն՝ զի զմի ոք արձակեցից ձեզ ի զատկիս. արդ կամի՞ք զի արձակեցից ձեզ զԹագաւորն Հրէից։ Աղաղակեցին ամենեքեան և ասէին. մի՛ զդա, այլ զԲարաբբա. և էր Բարաբբայն այն աւազակ։ Յայնժամ ա՛ռ Պիղատոս զՅիսուս, և գան եհար։ Եւ զինուորացն արարեալ պսակ ի փշոց՝ եդին ի գլուխ Նորա, և զգեցուցին Նմա հանդերձ ծիրանի. և գային առ Նա և ասէին. ողջ եր, արքայ Հրէից։ Եւ հանէին Նմա ապտակս։ Ել դարձեալ Պիղատոս արտաքս և ասէ ցնոսա. ահա ածեմ զնա արտաքս առ ձեզ, զի գիտասջիք թէ ես վնաս ինչ ի Նմա ոչ գտանեմ։ Ել Յիսուս արտաքս, և ունէր պսակ ի փշոց և հանդերձ ծիրանի։ Եւ ասէ ցնոսա. ահա այրդ ցձեզ։ Իբրև տեսին զնա քահանայապետքն և սպասաւորք, զաղաղակ բարձին և ասեն. ի խաչ հան՝ ի խաչ հան զդա։ Ասէ ցնոսա Պիղատոս. առէք զդա ի ձեզ, և ձեզէն հանէք ի խաչ. զի ես ի դմա վնաս ինչ ոչ գտանեմ։ Պատասխանի ետուն Նմա Հրեայքն. մեք օրէնս ունիմք, և ըստ օրինաց մերոց պարտի մեռանել, զի զանձն իւր Որդի Աստուծոյ արար։ Իբրև լուաւ զբանս զայս Պիղատոս, առաւել ևս երկեաւ։ Եմուտ դարձեալ անդրէն յապարանսն, և ասէ ցՅիսուս. ուստի՞ ես դու։ Եւ Յիսուս ոչ ետ Նմա պատասխանի։ Ասէ ցնա Պիղատոս. ընդ իս ո՞չ խօսիս. ո՞չ գիտես եթէ իշխանութիւն ունիմ հանել զքեզ ի խաչ, և իշխանութիւն ունիմ արձակել զքեզ։ Պատասխանի ետ Յիսուս. ոչ ունէիր դու իշխանութիւն ի վերայ իմ և ոչ մի, եթէ ոչ էր տուեալ քեզ ի վերուստ. վասն այնորիկ որ մատնեաց զիս քեզ՝ Նորա մեծ մեղք են։ Եւ յայնմանէ Պիղատոս խնդրէր արձակել զնա. և Հրեայքն աղաղակէին և ասէին. եթէ զդա արձակես, չես բարեկամ կայսեր. ամենայն ոք որ Թագա-

Digitized by Google

ւոր կոչէ զանձն իւր, հակառակ է կայսեր: Իսկ Պիղատոս իբրև լուաւ զբանս զայսոսիկ, ած զՅիսուս արտաքս՝ և նստաւ ի վերայ բեմին ի տեղւոջն որ կոչէր քարայատակ, և եբրայեցերէն կապպաթա: Էր ուրբաթն զատկի, և էր ժամ իբրև վեցերորդ, և ասէ ցՀրեայսն. ահա թագաւորդ ձեր ցձեզ: Եւ նոքա աղաղակէին. բարձ ի մէնջ, բարձ ի մէնջ, և հան զդա ի խաչ: Ասէ ցնոսա Պիղատոս. ես զթագաւորդ ձեր ի խա՞չ հանիցեմ: Պատասխանի ետուն քահանայապետքն. չիք մեր թագաւոր՝ բաց ի կայսերէ: Յայնժամ ետ զնա ի ձեռս նոցա, զի ի խաչ ելանիցէ: ԺԹ. 16.

Երգ. Զհանդուրժելալ: Քար. Խնդրեսցուք: Կեցո: Ի Նխ:
Աղ. Քում ամենազօր և հրաշալի չարչարանացդ:
Եւ դնեն զխաչն և զաւետարանն ի վերայ բեմբոյն: 496:

---

## Ի ՑԵՐԵԿՆ

Ցերեկ ժամն ժողովին ի դուռն եկեղեցւոյն. և ասեն զճաշու ժամն, հանդերձ շարականօք և ամ. աղօթիւք: Եւ ապա ասեն:

Առաջին ՍԱՂՄՈՍ ԼԴ. ի Նխ:

ԿԸ. Յարեան ի վերայ իմ վկայք չարեաց, զոր ինչ ոչ գիտէի հարցանէին ցիս:

Փխ. Դատեա Տէր զայնոսիկ ոյք դատին զիս, մարտիր ընդ այնոսիկ որ մարտնչին ընդ իս:

Ա՛ռ զզէն և զասպար քո, և արի յօգնել ինձ. հան զսուր քո ընդդէմ հալածչաց իմոց, արգել զնոսա. և ասա դու ցանձն իմ՝ թէ փրկութիւն քո ես եմ:

Ամաչեսցեն և յամօթ լիցին ոյք խնդրէին զանձն իմ. դարձցին յետս և ամաչեսցեն ոյք խորհէին ինձ չար:

Եղիցին նոքա որպէս փոշի առաջի հողմոյ. և հրեշտակ Տեառն նեղեսցէ զնոսա:

Եղիցին ճանապարհք նոցա ի խաւար և ի գայթագղութիւն, և հրեշտակ Աստուծոյ հալածեսցէ զնոսա:

Ի նանիր թագուցին ինձ որոգայթ յապականութեան իւրեանց, և ի նանիր նախատեցին զանձն իմ:

Հասցէ ի վերայ նոցա որոգայթ զոր ոչ գիտացին, և որս զոր թագուցին՝ առցէ զոտս նոցա, և յորոգայթ ի նոյն անկցին:

Այլ անձն իմ ցնծասցէ ի Տէր, ուրախ եղիցի ի փրկ-

կութեան նորա . և ամենայն ոսկերք իմ ասասցեն, Տէր՝ ո՞ նման է քեզ ։

Զի փրկեաց զաղքատն ի ձեռաց հզօրի, զաղքատն և զտնանկն յայնցանէ որ յափշտակեն զնա ։

Յարեան ի վերայ իմ վկայք չարեաց, զոր ինչ ոչ գիտէի հարցանէին ցիս ։

Հատուցին ինձ չար փոխանակ ընդ բարւոյ, անժառանգել զանձն իմ խորհեցան յորդւոց ի մարդկանէ ։

Ես ի նեղել նոցա քուրձ զգենուի, խոնարհ առնէի պահօք զանձն իմ, և աղօթք իմ ի ծոց իմ դարձցին ։

Որպէս զեղբայր և զընկեր՝ այնպէս հաճոյ լինէի, որպէս սգաւոր և տրտում՝ այնպէս խոնարհ առնէի ։

Ի վերայ իմ ուրախ եղեն և ժողովեցան, ժողովեցան յիս տանջանք և ես ոչ ծանեայ . ցրուեցան և ոչ զղջացան ։

Փորձեցին զիս և արհամարհեցին, արհամարհանօք կրճտեցին ի վերայ իմ զատամունս իւրեանց . Տէր, ե՞րբ տեսցես ։

Ի բաց արա զանձն իմ ի խորամանկութենէ նոցա, և յառիւծուց զմիամօրութիւն իմ ։

Խոստովան եղէց քեզ Տէր, յեկեղեցիս մեծս, և ի ժողովս բազմաց օրհնեցից զքեզ ։

Մի՛ ուրախ եղիցին յիս թշնամիք իմ որք ատէին զիս ի տարապարտուց . ակնարկի առնէին յիս աչօք իւրեանց ։

Ընդ իս զխաղաղութիւն խօսէին, և ինքեանք բարկութեամբ զնենգութիւն խորհէին ։

Բացին ի վերայ իմ զբերանս իւրեանց, և ասացին՝ այո այո տեսին աչք մեր ։

Տեսեր Տէր, և մի՛ լռեր, Տէր մի՛ ի բացեայ առնիր յինէն ։

Զարթիր և հայեաց Տէր, յիրաւունս իմ, Աստուած իմ և Տէր իմ, ի դատաստանս իմ . և իրաւ արա ինձ ըստ արդարութեան քում Տէր Աստուած իմ ։

Մի՛ ուրախ եղիցին յիս թշնամիք իմ, և մի՛ ասասցեն ի սիրտս իւրեանց թէ վաշ վաշ անձանց մերոց զի ընկլուզաք զնա ։

Ամաչեսցեն և յամօթ լիցին որք խնդային ընդ չար իմ . զգեցցին զամօթ և զանարգանս որք մեծաբանէին ի վերայ իմ ։

Ցնծասցեն և ուրախ լիցին ի քեզ ամենեքեան, որք կամին ընդ արդարութիւն իմ ։

Digitized by Google

Ասասցեն յամենայն ժամ՝ մեծ է Աստուած, և որք կամին զխաղաղութիւն ծառայի քո :
Լեզու իմ խօսեսցի զարդարութիւնս քո, զօրհանապազ զգովութիւնս քո :

Ընթերցուած ի Զաքարիայ մարգարէէ: ԺԱ. 11:

Եւ ծանիցեն քանանացիքն զխաշինս պահեստի իմոյ. զի բան Տեառն է : Եւ ասացի ցնոսա, թէ բարւոք թուի յաչս ձեր՝ տուք զվարձս իմ. ապա թէ ոչ՝ զրոյց արարէք : Եւ կշռեցին զվարձս իմ երեսուն արծաթի. և ասէ ցիս Տէր. արկ դու զայդ ի բովս, և քննեա թէ փորձ իցէ, որպէս ես զտայ փորձ վասն նոցա : Եւ առի զերեսուն արծաթին, և արկի ի տուն Տեառն ի բով: Եւ ընկեցի զգաւազանն երկրորդ՝ զվիճակն, ցրել զուխտ իմ ի մէջ Յուդայ և ի մէջ Իսրայելի : 14 :

Պօղոսի առաքելոյն ի Գաղատացւոց թղթոյն
է ընթերցուածս: Զ. 14:

Այլ ինձ քաւ լիցի պարծել, բայց միայն ի խաչն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որով ինձ աշխարհ ի խաչ ելեալ է, և ես աշխարհի : Զի ի Քրիստոս Յիսուս, ոչ թլփատութիւն ինչ է, և ոչ անթլփատութիւն. այլ նոր արարածս. և որ միանգամ այսմ կանոնի միաբան լինին, խաղաղութիւն ի վերայ նոցա և ողորմութիւն, և ի վերայ Իսրայելին Աստուծոյ : Այսուհետև աշխատ ոք զիս մի՛ արասցէ, զի ես զչարչարանս Քրիստոսի ի մարմնի իմում կրեմ : Շնորհք Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ընդ ոգւոյդ ձերում եղբարք. ամէն :

Աղօթք հանդերձ սաղմոսելով զՏէր աղաչեսցուք :
Քահ. Տէր ողորմեա : Երիցս կրկնել :

Քար. Եւ ևս խաղաղութեան : Քահ. Օրհնութիւն և փառք :

Երկրորդ ՍԱՂՄՈՍ ԼԷ. ի Բե

48. Ես ի տանջանս պատրաստ եմ, և ցաւք իմ առաջի իմ են յամենայն ժամ :

Փխ. Տէր մի՛ սրտմտութեամբ քով յանդիմաներ : 405:

Ընթերցուած յԵսայեայ մարգարէէ: Գ. 10:

Վա՜յ անձանց նոցա՝ զի խորհեցան խորհուրդ չար առանձինն և ասեն. կապեսցուք զարդարն՝ զի դժպհի եղև

Digitized by Google

մեզ։ Այսուհետեւ զպտուղս գործոց իւրեանց կերիցեն։ Վայ ամպարշտին, չարիք ըստ գործոց ձեռաց իւրոց անցցեն ընդ նա։ Ժողովուրդ իմ, հարկահանք ձեր ճռաքաղ առնեն զձեզ, և պահանջօղք տիրեն ձեզ. ժողովուրդ իմ, որ երանեն ձեզ՝ խաբեն զձեզ, և զշաւիղս ոտից ձերոց խռովեցուցանեն։ Այլ արդ հասցէ Տէր ի դատաստան, և կացուսցէ յատեանի զժողովուրդ իւր. ինքնին Տէր ի դատ եկեսցէ ընդ ծերս ժողովրդեան իւրոյ և ընդ իշխանս նոցա. դուք զի՞ հրկէզ արարէք զայգի իմ, և յափշտակութիւն տնանկին է ի տունս ձեր. դուք զի՞ զըրկէք զժողովուրդ իմ, և զերեսս տնանկաց լի առնէք ամօթով, ասէ Տէր՝ Տէր զօրութեանց։ 15։

Պօղոսի առաքելոյն ի փիլիպեցւոց թղթոյն է
ընթերցուածս: Բ. 5։

Զայն խորհեսցի իւրաքանչիւր ոք ի ձեզ, որ և ի Քրիստոս Յիսուս. որ ի կերպարանս Աստուծոյ է, ոչ ինչ յափշտակութիւն համարեցաւ զլինելն հաւասար Աստուծոյ. այլ զանձն ունայնացոյց՝ զկերպարանս ծառայի առեալ, ի նմանութիւն մարդկան եղեալ, և կերպարանօք գտեալ իբրև զմարդ։ Խոնարհեցոյց զանձն, լեալ հնազանդ մահու չափ և մահու խաչի։ Վասն որոյ և Աստուած զնա առաւել բարձրացոյց, և շնորհեաց նմա անուն որ ի վեր է քան զամենայն անուն. զի յանուն Յիսուսի Քրիստոսի ամենայն ծունր կրկնեսցի, երկնաւորաց և երկրաւորաց և սանդարամետականաց. և ամենայն լեզու խոստովան լիցի, թէ Տէր է Յիսուս Քրիստոս ի փառս Աստուծոյ Հօր։ 11։

Ազօթք հանդերձ սաղմոսելով զՏէր աղաչեսցուք։ Քահ. Տէր ողորմեա։ Երեքս կրկնեա։

Քար. Եւ ևս խաղաղութեան։ Քահ. Օրհնութիւն և փառք։

Երրորդ ՍԱՂՄՈՍ Խ. է ՆԾ–

48. Մտանէր տեսանել զնանրութիւն, խօսէր ի սըրտի իւրում. ժողովէր զանօրէնութիւնս յանձն իւր։

Փխ. Երանի որ խորհի զաղքատն։ 409։

Ընթերցուած յԵսայեայ մարգարէէ։ Ծ. 4։

Տէր, Տէր տայ ինձ լեզու խրատու, զի գիտացից խօսել ի ժամու զբանն։ Պատրաստեաց զիս ընդ առաւօտս.

Digitized by Google

յաւել ինձ ունկն ի լսել, և խրատ Տեառն բանայ զա-կանջս իմ, և ես ոչ խստանամ և ոչ ընդդէմ դառնամ: Զթիկունս իմ ետու ի հարուածս, և զծնօտս իմ յապտակս, և զերեսս իմ ոչ դարձուցի յամօթոյ ընդ երեսս թքան-լոյ: Եւ Տէր, Տէր եղև իմ օգնական. վասն այնորիկ ոչ ամաչեցի, այլ արարի զդէմս իմ իբրև զվէմ հաստատուն: Եւ գիտացի թէ ոչ ամաչեցից. զի մերձ է որ արդարա-ցուցանէ զիս. ով է ոսոխն իմ, եկեսցէ և կացցէ ի մէջ. և ով է որ դատի՛ն զիս, մերձեսցի առ իս: Զի ահաւա-սիկ Տէր, Տէր օգնական է ինձ, ով է որ չարչարեսցէ զիս: Ահաւասիկ դուք ամենեքեան իբրև զձորձս հնաս-ջիք, և ցեց մեցամէս կերիցէ զձեզ: 9:

Պօղոսի առաքելոյն ի Հռովմայեցւոց թղթոյն
է ընթերցուածս: Ե. 6:

Զի մինչդեռ տկարքն էաք, Քրիստոս վասն մեր ի ժա-մանակի ի վերայ ամպարշտաց մեռաւ. զի վասն արդա-րոյ հազիւ ոք մեռանիցի, այլ վասն բարւոյ թերևս հա-մարձակիցի ոք մեռանել: Ցուցանէ Աստուած զսէրն իւր ի մեզ. զի մինչդեռ մեղաւորքն էաք, Քրիստոս վա-սն մեր մեռաւ. ո՞րչափ ևս առաւել յարդարանալս մե-րում այժմիկ արեամբն նորա՝ ապրեսցուք նովաւ ի բար-կութենէ անտի: Զի եթէ մինչ թշնամիքն էաք, հաշտե-ցաք ընդ Աստուծոյ մահուամբ Որդւոյ նորա, ո՞րչափ ևս առաւել ի հաշտելս մերում ապրեսցուք կենօքն նորա: Եւ ոչ այսչափ միայն, այլ և պարծիմք ևս յԱստուած ի ձեռն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որով և զհաշ-տութիւն իսկ ընկալաք: 11:

Աղօթք հանդերձ սաղմոսելով զՏէր աղաչեսցուք: Քահ. Տէր ողորմեա: Երիցս կրկնեա:

Քար. Եւ ես խաղաղութեան: Քահ. Օրհնութիւն և փառք:

Չորրորդ ՍԱՂՄՈՍ ԻԱ. ԺԹ.

Կց. Բաժանեցան զհանդերձս իմ ի մէջ իւրեանց, և ի վերայ պատմուճանի իմոյ վիճակս արկանէին:

Փխ. Աստուած Աստուած իմ նայեաց առ իս, ընդէ՞ր թողեր զիս. հեռի եղէ ի փրկութենէ իմմէ՝ վասն բանից յանցանաց իմոց:

Աստուած իմ, ի տուէ կարդացի առ քեզ, և ինձ ոչ

Digitized by Google

լուար . ի գիշերի՝ եւ ինձ ոչ անսացեր ։

Դու ի սուրբս բնակեալ ես , եւ գովեալ յԻսրայէլի ։

Ի քեզ յուսացան հարքն մեր, յուսացան ի քեզ եւ փրկեցեր զնոսա ։

Առ քեզ աղաղակեցին եւ կեցին , ի քեզ յուսացան եւ ոչ ամաչեցին ։

Այլ ես որդն եմ եւ ոչ եմ մարդ , նախատինք մարդկան եւ արհամարհանք ժողովրդոց ։

Ամենեքեան որ տեսանէին զիս արհամարհէին զինեւ , խօսէին շրթամբք եւ շարժէին զգլուխս իւրեանց ։

Յուսացաւ ի Տէր եւ փրկեսցէ զնա , կեցուսցէ զնա զի կամի զնա ։

Դու ես որ հաներ զիս յարգանդէ , յոյս իմ ի ստեանց մօր իմոյ ։

Ի քեզ անկայ ես յարգանդէ , յորովայնէ մօր իմոյ դու ես Աստուած իմ ։

Մի՛ ի բացեայ առներ յինէն , զի նեղութիւնք մերձեալ են , եւ ոչ ոք է որ օգնէ ինձ ։

Շուրջ եղեն զինեւ զուարակք բազումք , եւ ցուլք գէրք պաշարեցին զիս ։

Բացին ի վերայ իմ զբերանս իւրեանց , որպէս առիւծ զի մռնչէ եւ յափշտակէ ։

Իբրեւ որպէս զջուր հեղայ , եւ ցրուեցան ամենայն ոսկերք իմ , եւ եղեւ սիրտ իմ որպէս մոմ հալեալ ի մէջ որովայնի իմոյ ։

Ցամաքեցաւ որպէս խեցի զօրութիւն իմ , լեզու իմ ի քիմս իմ կցեցաւ , եւ ի հող մահու իջուցին զիս ։

Շուրջ եղեն զինեւ շունք բազումք , եւ ժողովք չարաց պաշարեցին զիս ։

Ծակեցին զձեռս իմ եւ զոտս իմ , եւ թուեցին զամենայն ոսկերս իմ . եւ նոքա հայեցան եւ տեսին զիս ։

Բաժանեցան զհանդերձս իմ ի մէջ իւրեանց , եւ ի վերայ պատմուճանի իմոյ վիճակս արկանէին ։

Դու Տէր , մի՛ հեռի առներ զօգնութիւն քո յինէն , եւ Տէր յօգնել ինձ նայեաց ։

Փրկեա ի սրոյ զանձն իմ , եւ ի ձեռաց շանց զմիամօրութիւն իմ ։

Փրկեա զիս ի բերանոյ առիւծու , յեղջերէ միեղջերւոյ զխոնարհութիւն իմ ։

Պատմեցից զանուն քո եղբարց իմոց, ի մէջ եկեղեցւոյ օրհնեցից զքեզ ։

Երկիւղածք Տեառն, օրհնեցէք զՏէր. ամենայն զաւակն Յակովբեան փառաւոր արասցեն զնա ։

Երկիցէ ի Տեառնէ ամենայն զաւակն Իսրայելի, զի ոչ արհամարհեաց և ոչ անարգեաց Տէր զաղօթս աղքատի, և ոչ դարձոյց զերեսս իւր յինէն, այլ ի կարդալ իմում առ նա լուաւ ինձ ։

Ի քէն է գովութիւն իմ, յեկեղեցիս մեծս օրհնեցից զքեզ ։

Զուխտս իմ կատարեցից առաջի ամենայն երկիւղածաց նորա ։

Կերիցեն տնանկք և յագեսցին, օրհնեսցեն զՏէր որ խնդրեն զնա ։

Կեցցեն սիրտք նոցա յաւիտեանս յաւիտենից, յիշեսցեն և դարձցին առ Տէր ամենայն ծագք երկրի ։

Երկիր պագցեն նմա ամենայն տոհմք ազգաց. զի Տեառն է արքայութիւն, և նա տիրէ ի վերայ ամենայն հեթանոսաց ։

Կերան և երկիր պագին նմա ամենայն պարարտք երկրի, առաջի նորա անկցին ամենեքեան որ իջանեն ի հող։

Անձն իմ նովաւ կեայ, և զաւակ իմ ծառայեսցէ նմա։

Պատմեցից զՏեառնէ ազգի որ գալոցն է, պատմեսցեն զարդարութիւն նորա ժողովրդեան որ ծնանելոցն իցէ, զոր արար Տէր ։

Ընթերցուած յԱմովսայ մարգարէէ: Ը. 9։

Եւ եղիցի յաւուր յայնմիկ, ասէ Տէր Տէր, մտցէ արեգակն ի միջօրէի, և խաւարեսցի յերկրի լոյս ի տուէ, և դարձուցից ի սուգ զտօնս ձեր, և զամենայն երգս ձեր յողբս, և ածից ի վերայ ամենայն հասակաց քուրձ, և ի վերայ ամենայն գլխոց կնդութիւն. և արարից նմա իբրև սուգ սիրելւոյ, և որոց ընդ նմայն իցեն՝ իբրև օր ցաւոց ։ Ահա աւուրք գան, ասէ Տէր Տէր. և առաքեցից սով յերկիր. ոչ սով հացի և ոչ ծարաւ ջրոյ, այլ սով լսելոյ զբանն Տեառն։ Եւ խռովեսցին ջուրք ի ծովէ մինչև ի ծով, և ի հիւսիսոյ մինչև յարևելս. ընթասցին խնդրել զբանն Տեառն, և մի՛ գտցեն ։ 12 ։

Պօղոսի առաքելոյն ի Կորնթացւոց առաջին թղթոյն
է ընթերցուածս՝ Ա. 18։

Զի ճառ խաչին կորուսելոցն յիմարութիւն է, այլ

փրկելոցս մեզ զօրութիւն Աստուծոյ։ Զի գրեալ է. կորուսից զիմաստութիւն իմաստնոց, և զխորհուրդս խորհըրդականաց արհամարհեցից։ Ո՞ւր իմաստուն, ո՞ւր դըպիր, ո՞ւր քննիչ աշխարհիս այսորիկ. ոչ ապաքէն յիմարեցոյց Աստուած զիմաստութիւն աշխարհիս այսորիկ։ Քանզի իմաստութեամբն Աստուծոյ ոչ ծանեաւ աշխարհ իմաստութեամբն զԱստուած, հաճեցաւ Աստուած յիմարութեամբ քարոզութեանն ապրեցուցանել զհաւատացեալըս։ Իսկ որովհետև Հրեայք նշան հայցեն, և հեթանոսք իմաստութիւն խնդրեն, մեք քարոզեսցուք զխաչելեալն Քրիստոս՝ Հրէից գայթագղութիւն և հեթանոսաց յիմարութիւն. բայց նոցին իսկ կոչեցելոցն Հրէից և հեթանոսաց՝ զՔրիստոս Աստուծոյ զօրութիւն և Աստուծոյ իմաստութիւն. զի յիմարն Աստուծոյ իմաստնագոյն է քան զմարդիկ, և տկարն Աստուծոյ զօրագոյն է քան ըզմարդիկ։ Թէպէտ և զձեր իսկ կոչումն տեսէք եղբարք, զի ոչ բազում իմաստունք ըստ մարմնոյ, և ոչ բազում հզօրք, և ոչ բազում ազնուականք. այլ զյիմարս աշխարհիս ընտրեաց Աստուած, զի յամօթ արասցէ զիմաստունս. և զտկարս աշխարհիս ընտրեաց Աստուած, զի յամօթ արասցէ զհզօրս. և զանարգս աշխարհի և զարհամարհեալս ընտրեաց Աստուած՝ և զոչինչս, զի զէսն իմն խափանեսցէ. որպէս զի մի՛ պարծեսցի ամենայն մարմին առաջի Աստուծոյ։ Զի ի նմանէ դուք էք ի Քրիստոս Յիսուս, որ եղև մեզ իմաստութիւն յԱստուծոյ արդարութիւն և սրբութիւն և փրկութիւն. զի որպէս և գրեալ է, որ պարծին ի Տէր պարծեսցի։ 31։

Աղօթք հանդերձ սաղմոսելով զՏէր աղաչեսցուք։
Քահ. Տէր ողորմեա։ Երիցս կրկնել։

Քար. Եւ ևս խաղաղութեան։ Քահ. Օրհնութիւն և փառք։

Հինգերորդ ՍԱՂՄՈՍ Լ. է ԲԺ

Կց. Ի ձեռս քո յանձն առնեմ զհոգի իմ։
Փխ. Ի քեզ Տէր յուսացայ, մի՛ ամաչեցից։ 401։

Ընթերցուած յեսայիայ մարգարէէ: ԾԲ. 13:

Ահաւադիկ ի միտ առցէ մանուկ իմ. վերասցի և բարձրասցի և փառաւորեսցի յոյժ։ Զոր օրինակ զարմասցին բազումք ի վերայ քո, այնպէս անշքեսցի տեսիլ քո ի

մարդկանէ, և փառք քո յորդւոց ի մարդկանէ: Այնպէս զարմասցին ազգք բազումք ի վերայ քո, և կարկեսցեն թագաւորք զբերանս իւրեանց: Զի որոց ոչ պատմեցաւ վասն Նորա՝ տեսցեն, և որոց ոչ իցէ լուեալ՝ ի միտ առցեն: Տէր ո՞ հաւատաց լրոյ մերում, և բազուկ Տեառն ո՞ւմ յայտնեցաւ: Պատմեցաք առաջի Նորա իբրև զմանուկ, իբրև զարմատ ի ծարաւուտ երկրէ. ոչ գոյր Նորա տեսիլ և ոչ փառք. տեսաք մեք զնա, և ոչ գոյր Նորա տեսիլ և ոչ գեղեցկութիւն. այլ տեսիլ Նորա անարգ՝ նուաղեալ քան զամենայն որդւոց մարդկան: Այր մի ի հարուածս, և գիտէ համբերել ցաւոց. զի դարձուցեալ զերեսս իւր՝ անարգեցաւ և ոչ ինչ համարեցաւ: Նա զմեղս մեր բառնայ և վասն մեր չարչարի, և մեք համարեցաք զնա ի ցաւս և ի հարուածս և ի չարչարանս իբրև յԱստուծոյ: Բայց Նա վիրաւորեցաւ վասն մեղաց մերոց, և պատժեցաւ վասն մերոց անօրէնութեանց. խրատ խաղաղութեան մերոյ ի Նմա, և Նորա վիրօքն բժշկեցաք: Ամենեքեան իբրև ոչխարք մոլորեալք. այր ի ճանապարհի իւրում մոլորեցաւ, և Տէր մատնեաց զՆա առ մեղս մեր. և Նա առ վշտին ոչ բանայ զբերան իւր: Իբրև ոչխար ի սպանդ վարեցաւ, և իբրև որոջ առաջի կտրչի անմռունչ կայ, այնպէս ոչ բանայ զբերան իւր: Ի խոնարհութեան Նորա դատաստան Նորա բարձաւ, և զազգատոհմն Նորա ո՞ պատմեսցէ. զի բառնան յերկրէ կեանք Նորա, յանօրէնութեանց ժողովրդեան իմոյ ի մահ վարեցաւ: Եւ տաց զչարս փոխանակ գերեզմանի Նորա, և զմեծամեծս փոխանակ մահու Նորա. զի անօրէնութիւն ոչ գործեաց, և ոչ գտաւ նենգութիւն ի բերան Նորա. և Տէր կամի սրբել զնա ի վիրաց անտի: Եթէ տաջիք զվասն մեղացն, անձինք ձեր տեսցեն զաւակ երկայնակեաց. և կամի Տէր ի ձեռն Նորա բառնալ ի ցաւոց անձին Նորա, ցուցանել Նմա լոյս և ստեղծուլ իմաստութեամբ, արդարացուցանել զարդարն՝ որ մտադիւրն ծառայեաց բազմաց, և զմեղս նոցա Նա վերացուսցէ: Վասն այնորիկ Նա ժառանգեսցէ զբազումս, և զաւար հզօրաց բաշխեսցէ. փոխանակ զի ի մահ մատնեցաւ անձն Նորա, և ընդ անօրէնս համարեցաւ. և Նա զմեղս բազմաց վերացոյց և վասն անօրէնութեանց նոցա մատնեցաւ: ԾԳ. 12:

*Պօղոսի առաքելոյն յեբրայեցւոց թղթոյն*
*է ընթերցուածս: Բ. 11:*

*Զի որ սրբէն և որ սրբին, ի միոջէ էին ամենեքեան. վասն որոյ ոչ ամօթ համարի եղբարս անուանել զնոսա, և ասէ. պատմեցից զանուն քո եղբարց իմոց, ի մէջ եկեղեցւոյ օրհնեցից զքեզ. և դարձեալ՝ թէ ես եղէց յուսացեալ ի նա. և դարձեալ՝ ահաւասիկ ես և մանկունք իմ զոր ետ ինձ Աստուած: Արդ որովհետև մանկունք հաղորդեցին արեան և մարմնոյ, և ինքն իսկ մերձաւորութեամբ կցորդ եղև նոցունց. զի մահուն իւրով խափանեսցէ զայն որ զիշխանութիւն մահուն ունէր, այս ինքն է՝ զսատանայ. և ապրեցուսցէ զայնոսիկ որ մահուն երկիւղիւ համապազ կէին վտարանդեալք ի ծառայութիւն: Քանզի ոչ երբէք զհրեշտակաց բուռն հարկանէ, այլ զզաւակէն Աբրահամու բուռն հարկանէ. ուստի պարտ իսկ էր նմա ամենայնիւ եղբարց նմանել. զի ողորմած լինիցի, և հաւատարիմ քահանայապետ յաստուածակոյս կողմանէ սնտի, առ ի քաւելոյ զմեղս ժողովրդեանն: Զի որով ինքն չարչարեցաւ՝ զփորձ առեալ, կարող է և փորձանաւորացն օգնական լինել: 18:*

Ես տղայ սկսանէին չէրք տեսցեալ Տեառն Ներսէսի յաղագս մե-ծի աւրհնութեան ցերեկի աւետարանացն:

ՇԱՐԱԿԱՆ ԴԿ

Նորոգող տիեզերաց որ զգեցուցեր մեզ լոյս փառաց. արկար ըզքեւ ի զինուորաց քղամիթ կարմիր նախատանաց. մերկեալ յինէն ըզքուրձ մեղաց ըզտըրտմագինն արեամբ ներկած. եւ ըզգեցո զուրախալին ըզպատմուճանն իմ զառաջին: Երկնաւոր թագաւորիդ ի ծունր իջեալ խաղ առնէին. ծածկեալ ըզգլուխըդ կըռփէին և եղեգամբ հարկանէին. եւ զիմ անկեալ մինչ ի գետին ի հնազանդել կամաց չարին. մի թողուցուս խաղալ սոսկին այլ կանգնեսցես զիս վերըստին: Բաշխեալ բոլորըդ քո մարմին յետ վըճըռոյ դատաւորին. սաստիկ էառ զհարուած գանին վասըն գանից նախաստեղծին. զիս որ յոտից մինչեւ ցգըլուխ ցաւօք նեղիմ անհընարին. ա-

առողջացո՛ դարձեա՜լ կըրկին որպէ՜ս շնորհօք յաւա՜զանի՜ն։ Սը՛րբափա՜յլ պըճնեա՛լ զա՜րդուն զոր զգե՛ցուցեր Ահա-րո՜նի՛ն . փո՛խան պըսակ ի փշո՜ց եդին մըշա՛կք ա՜յգւոյն Իսրայելի՛ն . ըզփո՛ւշ մեղա՜ց հանցե՛ս յինէն զոր յի՛ս ե՜-հար իմ Թըշնամի՛ն . Ե՜ւ ողջացո՛ զխայթուա՜ծ վիրեն զի՛ ապի՜ք մեղացըն ջը՜նջեսցի՜ն ։

## Ձկնէ Օրթի

**Այս առաջաբան առաքելոցն դասն է ։**

**Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի ։ Իէ . 1 ։**

**Վասն խաչելութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։**

**Իբրև այգ եղև , խորհուրդ արարին ամենայն ։ 169 ։**

**Ազօթք հանդերձ սաղմոսելով զՏէր աղաչեսցուք։**

**Քահ. Տէր ողորմեա ։ Երիցս կրկնեա ։**

**Քար. Եւ ևս խաղաղութեան ։ Քահ. Օրհնութիւն և փառք։**

**Վեցերորդ ՍԱՂՄՈՍ ԿԸ . է Ռե**

**Կ8 . Ետուն ի կերակուր ինձ լեղի , և ի ծարաւ իմ արբուցին ինձ քացախ ։**

Փխ. Կեցո զիս Աստուած , զի հասին ջուրք յանձն իմ , ընկլայ ես ի խորս անդնդոց , ուր ոչ գոյ ինձ հանգիստ։

Եկի ես ի խորս ծովու , և շրջանք ընկղմեցին զիս ։

Վաստակեցի ես առ աղաղակել , կերկերեցաւ կո-կորդ իմ ։

Նուաղեցին աչք իմ , առ յուսալ ինձ առ Տէր Աս-տուած իմ ։

Բազում եղեն քան զհեր գլխոյ իմոյ ոյք ատէին զիս ի տարապարտուց ։

Զօրացան յիս Թշնամիք իմ և ատելիք իմ ի նանիր . ինչ զոր ոչ յափշտակեալ էր՝ տուժէի նոցա ։

Աստուած դու ծանեար զանզգամութիւն իմ , և յան-ցանք իմ ի քէն ոչ ծածկեցան ։

Մի՛ ամաչեսցեն վասն իմ որ համբերեն քեզ , Տէր Տէր զօրութեանց . մի՛ պատկառեսցեն վասն իմ ոյք խնդրեն զքեզ , Աստուած Իսրայելի ։

Վասն քո համբերի նախատանաց , և ծածկեաց ամօթ զերեսս իմ ։

Օտար եղէ ես եղբարց իմոց, և հիւր որդւոց մօր իմոյ ։

Նախանձ տան քո եկեր զիս, նախատինք նախատչաց քոց անկան ի վերայ իմ ։

Խոնարհեցուցի պահօք զանձն իմ, և եղեն ինձ այս նախատինք. արարի զհանդերձս իմ քուրձ, և եղէ յառակ նոցա ։

Զինէն խորհէին որք նստէին առ դրունս, զիս այպն առնէին որք ըմպէին գինի ։

Ես յաղօթս կայի առ քեզ Տէր, ի ժամանակ ընդունելի ։

Աստուած ի բազում ողորմութեան քում լուր ինձ, ի ճշմարտութիւն փրկութեան քո ։

Ապրեցո զիս ի կաւոյ՝ զի մի ընկլայց, ապրեցայց ես յատելեաց իմոց և ի խորոց ջուրց բազմաց ։

Մի՛ ընկլցեն զիս պտոյտք ջուրց, և մի՛ ընկղմեսցեն զիս անդունդք խորոց. ջրհոր մի՛ կափուսցէ զբերան իւր ի վերայ իմ ։

Լուր ինձ Տէր, զի քաղցր է ողորմութիւն քո, ըստ բազում գթութեան քո հայեա յիս, և մի՛ դարձուցաներ զերեսս քո ի ծառայէ քումմէ, զի նեղեալ եմ ես. վաղվաղակի լուր ինձ ։

Հայեա յանձն իմ և փրկեա զիս, և վասն թշնամեաց իմոց ապրեցո զիս ։

Զի դու գիտես զնախատինս իմ, զամօթ իմ և զպատկառանս իմ ։

Առաջի քո են ամենայն նեղիչք անձին իմոյ. նախատանաց համբեր սիրտ իմ և թշուառութեան ։

Ակն ունէի՝ թէ ո՛ տրտմեսցի ընդ իս, և ոչ ոք էր. և մխիթարիչ ինձ ոք ոչ գտաւ ։

Ետուն ի կերակուր ինձ լեղի, և ի ծարաւ իմ արբուցին ինձ քացախ ։

Եղիցին սեղանք նոցա առաջի նոցա յորոգայթ, ի հատուցումն և ի գայթագղութիւն ։

Խաւարեսցին աչք նոցա զի մի՛ տեսցեն, և զթիկունս նոցա հանապազ կորացո ։

Արկցես ի վերայ նոցա զբարկութիւն քո, սրտմտութիւն բարկութեան քո հասցէ ի վերայ նոցա ։

Եղիցին բնակութիւնք նոցա աւերակ, և ի յարկս նոցա մի՛ ոք իցէ որ բնակիցէ ։

Digitized by Google

Զի զոր դու հարեր՝ հալածեցին, և ի վէրս ցաւոց իմոց յաւելին ։

Դիր զմեղս ի վերայ մեղաց նոցա, զի մի՛ մտցեն յարդարութիւն քո ։

Ջնջեսցին նոքա ի դպրութենէ քումմէ կենաց, և ընդ արդարս քո մի՛ գրեսցին ։

Աղքատ և ցաւած եմ ես, փրկութիւն քո Աստուած ընկալցի զիս ։

Օրհնեցից զանուն Աստուծոյ իմոյ օրհնութեամբ, և բարձր արարից զնա գովութեամբ ։

Հաճոյ եղիցի Աստուծոյ քան զորթ մատաղ, որ բերէ եղջիւրս և կճղակս ։

Տեսցեն աղքատք և ուրախ եղիցին. խնդրեցէք զԱստուած և կեցցեն անձինք ձեր ։

Զի լուաւ Տէր տնանկաց, և զկապեալս իւր ոչ արհամարհեաց ։

Օրհնեսցեն զնա երկինք և երկիր, ծով և ամենայն որ զեռայ ի նոսա ։

Աստուած փրկէ զՍիոն, և շինեսցին քաղաքք Հրէաստանի. շինեսցեն բնակեսցեն և ժառանգեսցեն ի նմա ։

Զաւակ ծառայից քոց հաստատեսցի անդ, և որք սիրեն զանուն քո բնակեսցեն ի նմա ։

Ընթերցուած յեսայեայ մարգարէէ: կգ. 1:

Իսկ այս ո՞վ է որ դիմեալ գայ յԵդովմայ, կարմրութիւն ձորձոց իւրոց ի Բոսորայ, գեղեցիկ պատմուճանաւ և բուռն զօրութեամբ ։ Ես խօսիմ զարդարութիւն և իրաւունս փրկութեան ։ Վասն է՞ր կարմիր են ձորձք քո, և հանդերձք իբրև հնձանահարի, լիոյ հնձանի կոխելոյ ։ Հնձան հարի միայն, և ի հեթանոսաց ոչ ոք էր ընդ իս. կոխեցի զնոսա սրտմտութեամբ և ճմլեցի զնոսա բարկութեամբ և իջուցի յերկիր, և զամենայն հանդերձս իմ թաթաւեցի. զի հասեալ էր ի վերայ նոցա օր հատուցման, և ամ փրկութեան եկեալ հասեալ ։ Հայեցայ՝ և ոչ ոք էր որ օգնէր, զմտաւ ածի՝ և ոչ ոք էր որ ի թիկունս հասանէր. փրկեաց զնոսա բազուկ իմ, և սրտմտութիւն իմ միայն զդէմ կալաւ. կոխեցի զնոսա բարկութեամբ իմով, և զենի զնոսա սրտմտութեամբ իմով, և իջուցի զնոսա յերկիր ։ 6 ։

Digitized by Google

*Պօղոսի առաքելոյն յԵբրայեցւոց թղթոյն է ընթերցուածս: Թ. 11:*

Այլ Քրիստոս եկեալ քահանայապետ հանդերձելոցն բարեաց, մեծաւն և կատարելով և անձեռագործ խորանաւն, այս ինքն է՝ որ ոչ յայսց արարածոց, և ոչ արեամբ նոխազաց և զուարակաց, այլ իւրով արեամբն եմուտ մի անգամ ի սրբութիւնսն, յաւիտենականս գտեալ զփրկութիւն: Զի թէ արիւն ցլուցն և նոխազաց և մոխիր երինջոցն ցանեալ զպղծեալսն սրբէր առ ի մարմնոյ սրբութենէ, որչափ ևս առաւել արիւնն Քրիստոսի, որ ի ձեռն հոգւոյն յաւիտենականի մատոյց զանձն անարատ պատարագ Աստուծոյ, սրբեսցէ զխիղճ մտաց ձերոց ի մեռելոտի գործոց անտի՝ պաշտել զԱստուած կենդանի: Եւ վասն այնորիկ նորոյ ուխտին է միջնորդ. զի յորժամ մահ լինիցի՝ ի փրկութիւն վասն առաջին ուխտին յանցանաց, զաւետիս առցեն հրաւիրեալքն ի ժառանգութիւնն յաւիտենից: Քանզի ուր կտակ է, հարկ է զմահ ի մէջ բերել զկտակագրին. զի կտակ՝ յետ մահու հաստատուն է. ապա թէ ոչ զի՞րդ իցէ հաստատուն մինչ կտակագիրն կենդանի է. ուստի և ոչ առաջինն առանց արեան նորոգէր: Քանզի իբրև պատմեցան ամենայն պատուիրանք օրինացն ի Մովսիսէ ժողովրդեանն, առեալ զարիւն ցլուցն և նոխազացն՝ ջրով և բրդով կարմրով և զոպայիւ, զկտակարանօքն իսկ և զամենայն ժողովրդեամբն սրսկեաց, և ասէ. այս է արիւն կտակին՝ զոր պատուիրեաց ձեզ Աստուած: Եւ զխորանաւն և զամենայն կահիւ սպասուն նոյնպէս սրսկեաց զարիւնն. և գրեթէ ամենայն ինչ արեամբն սրբէր ըստ օրինացն, և առանց հեղման արեան չլինէր թողութիւն: Ապա հարկ էր օրինաւորացն՝ այնպիսեօքն սրբել, և բուն իսկ երկնաւորացն՝ առաւել ևս պատարագօք քան զնոյնս. զի ոչ եթէ ի ձեռագործ սրբութիւնսն եմուտ Քրիստոս՝ յօրինակս ճշմարտութեանն, այլ ի բուն իսկ յերկինս՝ յանդիման լինել երեսացն Աստուծոյ վասն մեր: Ոչ զի բազում անգամ մատուցանիցէ զանձն պատարագ՝ որպէս քահանայապետն որ մտանէր ի սրբութիւն սրբութեանցն ամի ամի արեամբ օտարաւ. ապա թէ ոչ՝ պարտ էր նմա բազում անգամ չարչարել իսկզբանէ աշխարհի. բայց արդ ահաւասիկ մի անգամ ի կատարած յաւիտենից

Digitized by Google

յանարգութիւն մեղաց իւրով պատարագաւն յայտնեալ է ։ Եւ զոր օրինակ կայ Յեայ մարդկան մի անգամ մեռանել, և յետ այնորիկ դատաստան, նոյնպէս և Քրիստոս մի անգամ մատուցեալ պատարագ առ ի բառնալոյ զմեղս բազմաց. իսկ յերկրորդումն առանց մեղաց յայտնեսցի այնոցիկ՝ որ ակն ունիցին նմա հաւատովք ի փրկութիւն ։ 28 ։

ՇԱՐԱԿԱՆ ԴԿ

Ետուն ըմպել քեզ ըղլեղին և ըզքացախն ի ծարաւին. արբեր կամաւ զի քաղցրասցին ճաշակք պըտղոյն դառնագունին. ըզդառնութիւն թունաւորին զոր ի մասունս հոգւոյս արկին. հերքեա ի բաց հանդերձ սովին եւ քաղցրասցի սէր քո ի սմին ։ Ստեղնեալ ծառոյ մահաբերին այնմ որ բուսաւ ի մէջ դրախտին. փոխան բարձեր ըզփայտ խաչին ի Գողգոթայ հաներ տեղին. զիմ առ ի մեղս անկեալ հոգի և ծանրագոյն բարձող բեռին. բարձ ի յուսոյդ ըստ ոչխարին հան ի յերկինս յուխտեալ տեղին ։ Ի յուրբաթու ժամ երրորդին բեւեռեցար Տէր ի խաչին. լուծեր զկապանս նախաստեղծին և կապեցեր ըզթըշնամին. զիս ամրացո ընդ հովանեաւ կենդանարար քո նըշանին. եւ ի ծագելն յարութեան լուսաւորեա լուսով նորին ։ Էրանեալ աւազակին բացեր ըզդուռն Ադին դրախտին. ըստ հաւատոյ սըրտի նորին կատարեցեր ըզխընդրելին. տուր եւ ինձ Տէր ընդ նըմին լըսել ըզնոյն պատասխանին. այսօր ընդ իս լիցես յԱդին ի հայրենիս քո առաջին ։

Ջկնէ Օրթի

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մարկոսի ։ ծե. 1 ։

Վասն խաչելութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ։

Եւ վաղվաղակի ընդ առաւօտն խորհուրդ ։ 172 ։

Աղօթք հանդերձ սաղմոսելով զՏէր աղաչեսցուք ։

Քահ. Տէր ողորմեա ։ Երիցս կրկնեա ։

Քար. Եւ ես խաղաղութեան։ Քահ. Օրհնութիւն և փառք։

Եօթներորդ ՍԱՂՄՈՍ ՁԷ. Է ԲԺ

Կց. Եղէ ես որպէս մարդ առանց օգնականի, և ի մեռեալս ազատ։

Փխ. Տէր Աստուած փրկութեան իմոյ, ի տուէ կարդացի և գիշերի առաջի քո։

Մտցեն աղօթք իմ առաջի քո Տէր, խոնարհեսցի ունկըն քո ի խնդրուածս իմ։

Զի լցաւ չարչարանօք անձն իմ, և կեանք իմ ի դըժոխս մերձեցան, և համարեցայ ես ընդ այնոսիկ որ իջանեն ի գուբ։

Եղէ ես որպէս մարդ առանց օգնականի, և ի մեռեալըս ազատ։

Որպէս վիրաւորս, որ ննջեն ի գերեզմանի։

Զորս դու ոչ յիշեցեր, նոքա ի ձեռանէ քումմէ մերժեցան։

Եդին զիս ի գբի ներքնումն, ի խաւարի և ի ստուերս մահու։

Ցիս հաստատեցաւ սրտմտութիւն քո, զամենայն զբօսանս քո ածեր ի վերայ իմ։

Հեռի արարեր յինէն զծանօթս իմ, և եդին զիս նըշաւակ իւրեանց։

Մատնեցայ և ոչ ելանէի, աչք իմ տկարացաւ յաղքատութենէ։

Աղաղակեցի առ Տէր զօրհանապազ, և համբարձի առ քեզ զձեռս իմ։

Միթէ մեռելոց առնիցե՞ս սքանչելիս, կամ բժիշկք յարուցանիցե՞ն՝ խոստովան առնիցեն առ քեզ։

Միթէ պատմեսցէ՞ ոք երբեք ի գերեզմանի զողորմութիւնս քո, կամ զճշմարտութիւնս քո ի կորստեան։

Միթէ ճանաչիցի՞ն ի խաւարի սքանչելիք քո, կամ արդարութիւն քո յերկիր մոռացեալ։

Ես առ քեզ Տէր աղաղակեցի, առաւօտու աղօթք իմ ժամանեսցեն առ քեզ։

Ընդէ՞ր Տէր մերժես զանձն իմ, կամ դարձուցանես զերեսս քո յինէն։

Տնանկ և վաստակաւոր եմ ես ի մանկութենէ իմմէ, ի բարձրութենէ խոնարհեցայ և ապշեցայ։

Ցիս հաստատեցաւ բարկութիւն քո, արհաւիրք քո խռովեցուցին զիս ։

Շրջեցան զինև որպէս ջուր, զօր ամենայն պաշարեցին զիս ի միասին ։

Հեռի արարեր յինէն զբարեկամս իմ և զծանօթս իմ, վասն թշուառութեան իմոյ ։

Ընթերցուած յԵրեմիայ մարգարէէ: ԺԱ. 18:

Տէր ծանո ինձ և ծանեայց. յայնժամ տեսի զգործս նոցա ։ Ես իբրև զգառն անմեղ վարեալ ի սպանդ, ոչ գիտացի թէ զինէն խորհեցան խորհուրդ չար և ասեն. եկայք արկցուք փայտ ի հաց նորա, և ընջեսցուք զնա յերկրէն կենդանեաց, և անուն նորա մի՛ ևս յիշեսցի: Տէր զօրութեանց, որ ընտրես զիրաւունս, և քննես զերիկամունս և զսիրտս, տեսից առ ի քէն զվրէժխնդրութիւն առ ի նոսա. զի քեզ յայտնեցի զիրաւունս իմ։ Վասն այնորիկ այսպէս ասէ Տէր ի վերայ արանցն Անաթովթայ որ խնդրեն զանձն քո, և ասեն՝ մի՛ մարգարէանար վասն մեր, ապա թէ ոչ՝ մեռանիս ի ձեռաց մերոց։ Վասն այդորիկ այսպէս ասէ Տէր զօրութեանց. ահաւասիկ ես այց արարից ի վերայ նոցա. երիտասարդք նոցա սրով մեռցին, և ուստերք և դստերք նոցա սովով վախճանեսցին ։ Եւ մնացորդք ոչ եղիցին նոցա. զի ածից չարիս ի վերայ բնակչացն Անաթովթայ յամի այցելութեան նոցա ։ Արդար ես դու Տէր և մատուցից առաջի քո աղերս. բայց խօսեցայց զիրաւունս. զի՞ է զի ճանապարհք ամպարշտաց յաջողեալ են, և երջանկացան ամենեքեան որ արհամարհեն զարհամարհանս ։ Տնկեցեր զնոսա և արմատացան, ծնան որդիս՝ և արարին պտուղ. մերձ ես դու Տէր ի բերանս նոցա, և հեռի յերիկամանց նոցա ։ Եւ դու Տէր գիտես զիս, տեսեր զիս՝ և փորձեցեր զսիրտ իմ առաջի քո. ժողովեա զնոսա իբրև զոչխար ի սպանումն, և նուիրեա զնոսա յաւուր սպանման նոցա ։ Մինչև յե՞րբ սուգ ունիցի երկիր, և խոտ ամենայն վայրի ցամաքեսցի. ի չարեաց բնակչաց երկրին ապականեցան անասուն և թռչուն. զի ասացին թէ ոչ տեսցէ Աստուած զճանապարհս մեր։ Ոտք քո ընթանան՝ և լքուցեն զքեզ. զիա՞րդ կազմիցիս երիվարօք. իսկ արդ յերկի՞րդ խաղաղութեան յուսացեալ ես. զի՞ գործ-

ցես ի վերանալ Յորդանան գետոյ։ Քանզի և եղբարքն քո և տուն հօր քո, և նոքա դաւեցին քեզ, և նոքին աղաղակեցին զկնի քո, կուտեցան ի վերայ քո. մի՛ հաւատար նոցա զի խօսեսցին զքէն չարութիւն։ Լքի զտուն իմ, թողի զժառանգութիւն իմ, ետու զսիրելին անձին իմոյ ի ձեռս թշնամեաց իւրոց. եղև ժառանգութիւն իմ ինձ իբրև առիւծ յանապատի. ետ ի վերայ իմ զբարբառ իւր, վասն այնորիկ ատեցի զնա։ ԺԲ. 8։

Պօղոսի առաքելոյն յեբրայեցւոց թղթոյն
է ընթերցուածս: Ժ. 19:

Ունիմք այսուհետև եղբարք, համարձակութիւն։ 417։

ՇԱՐԱԿԱՆ ԴԿ

Բարբառելով զէլի էլին հիմունք երկրի տատանէին. եւ վարագոյր հին օրինին վերուստ ի վայր պատառէին. արդ ընդ վիմացն որ շարժէին շարժեա զանշարժ սիրտս ի բարին. ընդ պատառել վարագուրին զիմ պատառեա ըզգիր պարտին։ Արեգական լոյս քող արկեալ խաւարանայր միջօրէին. եւ դերեզմանըք բանային մարմինք սըրբոցըն յառնէին. ընդ խաւարել լուսաւորացն մաքրեա յինէն զգործ խաւարին. ընդ մեռելոցն որք յառնէին կանգնեա զմեղօք մեռեալ հոգիս։ Նոր սիրոյ պատուիրանին գործով լըցող եղեր Բանին. աղօթելով առ Հայր յերկինս թողուլ ըզմեղս որ ի խաչին. ինձ որ հոգւովս հաւատացեալ երկրպագեմ քեզ Միածին. թող ըզլուծումըն հրամանին մի յիշեսցին մեղքն առաջին։ Աղերսեցին սանդարամետք ի յաւանդելն առ Հայր զհոգին. որ ի դըժոխս իջեր ներքին ի բանտ մահու և խաւարին. կապեալ զիշխանըն մահածին հանէր զհոգիսն որ ի բանտին. եւ զիս հանցես Տէր ընդ նոսին բանտէ մեղաց աղջամղջին։

Digitized by Google

## Զկնի Օրթի

### Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու ։ ԻԲ. 66 ։

Վասն խաչելութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ։

Եւ իբրեւ այգ եղեւ, ժողովեցաւ ծերակոյտ ժողովրդեանն՝ քահանայապետքն եւ դպիրք, եւ հանին ածին զնա յատեանն իւրեանց՝ եւ ասեն. եթէ դու ես Քրիստոսն, ասա մեզ ։ Ասէ ցնոսա. թէ ասացից ձեզ, ոչ հաւատայք. եւ եթէ հարցից ինչ զձեզ՝ չտայք ինձ պատասխանի կամ արձակիցէք ։ Բայց յայսմ հետէ նստցի որդի մարդոյ ընդ աջմէ զօրութեանն Աստուծոյ ։ Եւ ասեն ամենեքեան. ուրեմն դու ես Որդին Աստուծոյ ։ Եւ նա ասէ ցնոսա. դուք ասէք թէ ես եմ ։ Եւ նոքա ասեն. զի՞նչ ևս պիտոյ է մեզ վկայութիւն, զի մեզէն իսկ լուաք ի բերանոյ դորա ։ Եւ յարուցեալ ամենայն բազմութիւնն նոցա՝ ածին զնա առ Պիղատոս ։ Եւ սկըսան չարախօս լինել զնմանէ եւ ասել. գտաք զսա զի թիւրէր զազգս մեր, եւ արգելոյր ի տալոյ հարկս կայսեր, եւ ասէր զանձնէ՝ թէ Քրիստոս իցէ թագաւոր ։ Իսկ Պիղատոս եհարց զնա եւ ասէ. դո՞ւ ես թագաւորն հրէից ։ Նա պատասխանի ետ նմա եւ ասէ. դու ասացեր ։ Ասէ Պիղատոս ցքահանայապետսն եւ ցժողովուրդսն. չգտանեմ ինչ վնաս յառնս յայսմիկ ։ Եւ նոքա պընդէին եւ ասէին, թէ խռովէ զժողովուրդս, ուսուցանէ ընդ ամենայն Հրէաստան՝ սկսեալ ի Գալիլեէ մինչեւ ցայսր ։ Իսկ Պիղատոս իբրեւ լուաւ զԳալիլեէ, եհարց եթէ գալիլեացի՞ իցէ այրն. եւ իբրեւ գիտաց թէ յիշխանութենէ Հերովդի է, ետ տանել զնա առ Հերովդէս. քանզի եւ նա յԵրուսաղէմ էր յաւուրսն յայնոսիկ ։ Եւ Հերովդէս իբրեւ ետես զՅիսուս, ուրախ եղեւ յոյժ. զի ցանկայր ի բազում ժամանակաց տեսանել զնա. քանզի լսէր բազում անգամ զնմանէ, եւ ակն ունէր նշան ինչ լեալ տեսանել ի նմանէ ։ Հարցանէր զնա բանիւք բազմօք, եւ նա ոչ ինչ ետ նմա պատասխանի ։ Կային քահանայապետքն եւ դպիրք՝ եւ պնդագոյնս չարախօսէին զնմանէ ։ Արհամարհեաց զնա եւ Հերովդէս հանդերձ իւրովք զօրականօքն, եւ այպն արարեալ՝ արկ զնովաւ հանդերձս սպիտակս, եւ ետ տանել անդրէն առ Պիղատոս ։ Եւ եղեն բարեկամք Պիղատոս եւ Հերովդէս յաւուր յայնմիկ. քանզի յառաջ

Digitized by Google

թշնամիք էին միմեանց։ Կոչեաց Պիղատոս զքահանայապետսն և զիշխանս և զժողովուրդն, և ասէ ցնոսա. ածէք մատուցէք ինձ զայրս զայս իբրև զխոտորեցուցիչ ժողովրդեանն, և ահաւասիկ առաջի ձեր դատեցայ, և վնաս ինչ ոչ գտի յառնս յայսմիկ՝ զորոց դուք չարախօսէքդ զդմանէ։ Այլ և ոչ Հերովդէս, քանզի ետու տանել զդա առ նա. և արդ ոչ ինչ մահու արժանի է գործեալ դորա. խրատեցից զդա, և արձակեցից։ Զի հարկ էր մի մի ըստ տօնի արձակել նոցա։ Եւ նոքա աղաղակէին ամենայն բազմութեամբն և ասէին. բարձ զդա, և արձակեա մեզ զԲարաբբա, որ էր վասն խռովութեան իրիք եղելոյ ի քաղաքին և սպանութեան մտեալ ի բանտ։ Դարձեալ Պիղատոս սկսաւ խօսել, քանզի կամէր արձակել զՅիսուս։ Եւ նոքա անդրէն աղաղակէին և ասէին. ի խաչ հան զդա։ Եւ նա երիցս ասէ ցնոսա. զի՞նչ չար արար սա. ոչ ինչ վնաս մահու գտի ի սմա. խրատեցից զսա և արձակեցից։ Եւ նոքա ստիպէին մեծաձայն՝ և խնդրէին զնա ի խաչ հանել. և զօրանային բարբառքն նոցա և քահանայապետիցն։ Եւ Պիղատոս հաւանեցաւ առնել զհայցուածս նոցա։ Արձակեաց նոցա զԲարաբբայն՝ զոր վասն խռովութեան և սպանութեան արկեալ էր ի բանտ, զոր և խնդրէինն իսկ, և զՅիսուս մատնեաց կամացն նոցա։ Իբրև առին գնացին զնա, ըմբռնեցին զոմն Սիմոն Կիւրենացի՝ որ գայր յանդէ, եդին ի վերայ նորա զխաչն՝ բերել զկնի Յիսուսի։ Եւ երթայր զհետ նորա բազմութիւն ժողովրդեանն, և կանանց որ կոծէին և աշխարէին զնա։ Դարձաւ Յիսուս և ասէ ցնոսա. դստերք Երուսաղեմի, մի՛ լայք ի վերայ իմ, այլ լացէք ի վերայ անձանց և ի վերայ որդւոց ձերոց. զի եկեսցեն աւուրք յորս ասիցեն, թէ երանի ամլոց և որովայնից՝ որ ոչ ծնան, և ստեանց՝ որ ոչ դիեցուցին։ Յայնժամ սկսանիցին ասել լերանց՝ թէ անկերուք ի վերայ մեր, և բլրոց՝ թէ ծածկեցէք զմեզ։ Զի եթէ ընդ փայտ դալար զայս առնեն, ընդ չորն զի՞նչ լինիցի։ Ածին և այլ երկուս չարագործս՝ սպանանել ընդ նմա։ Իբրև չոգան ի տեղին կոչեցեալ Գագաթն, անդ հանին զնա ի խաչ. և զչարագործսն՝ զոմն ընդ աջմէ և զոմն ընդ ձախմէ խաչեցին։ Եւ Յիսուս ասէ. Հայր, թող դոցա՝ զի ոչ գիտեն զինչ գործեն։ Եւ ի բաժանել զհանդերձս նորա,

Digitized by Google

տրկին վիճակս. և կայր ժողովուրդն հայեցեալ։ Անգոսնէին զնա իշխանքն հանդերձ նոքօք՝ և ասէին. զայլս ապրեցոյց, ապրեցուսցէ և զանձն՝ եթէ դա է Քրիստոս Որդի Աստուծոյ ընտրեալն։ Այպն առնէին զնա և զինուորքն, եկեալ առաջի՝ մատուցանէին նմա քացախ և ասէին. եթէ դու ես Թագաւորն Հրէից՝ փրկեա զանձն քո։ Եւ էր գիր գրեալ ի վերայ նորա, յունարէն և դաղմատերէն և եբրայեցերէն գրով, թէ սա է արքայն Հրէից։ Իսկ մի ոմն ի կախելոց չարագործացն հայհոյէր զնա՝ և ասէր. ո՞չ դու ես Քրիստոսն, փրկեա զանձն քո և զմեզ։ Պատասխանի ետ ընկերն սաստելով նմա՝ և ասէ. չերկնչիս դու յԱստուծոյ՝ զի ի նմին պատժի կաս. և մեք յիրաւի, զի արժանի որոց գործեցաքն՝ առնումք ընդ հատուցումն, և սա ապիրատ ինչ ոչ գործեաց։ Եւ ասէ ցՅիսուս. յիշեա զիս Տէր, յորժամ գայցես արքայութեամբ քով։ Եւ ասէ ցնա Յիսուս. ամէն ասեմ քեզ, այսօր ընդ իս իցես ի դրախտին։ Եւ էր իբրև վեցերորդ ժամ. և խաւար եղև ի վերայ ամենայն երկրի մինչև ցիններորդ ժամն. խաւարեցաւ արեգակն։ Եւ հերձաւ վարագոյր տաճարին ընդ մէջ։ Եւ կարդաց Յիսուս ի ձայն մեծ՝ և ասէ. Հայր, ի ձեռս քո աւանդեմ զհոգի իմ։ Զայս իբրև ասաց՝ եհան զոգի։ Եւ տեսեալ հարիւրապետին զոր ինչ եղևն, փառաւոր արար զԱստուած և ասէ. արդարև այրս այս արդար էր։ Եւ ամենայն ժողովուրդքըն որ եկեալ էին, և տեսանէին զտեսիլն զայն և ըդգործ, բախէին զկուրծս՝ և դառնային։ Կային և ամենայն ծանօթքն նորա ի հեռաստանէ, և կանայք որք եկեալ էին զհետ նորա ի Գալիլեէ՝ տեսանէին զայն։ 49։

Աղօթք հանդերձ սաղմոսելով զՏէր աղաչեսցուք։
Քահ. Տէր ողորմեա։ Երէցս կրկնեա։

Քար. Եւ ևս խաղաղութեան։ Քահ. Օրհնութիւն և փառք՝

Ո–ԲԵրորդ ՍԱՂՄՈՍ ՃԱ. է ԲԺ–

ԿՅ. Կցեցաւ ոսկր իմ ի մարմին իմ, նմանեցայ ես հաւալուսան յանապատի։

Փխ. Տէր լուր աղօթից իմոց, աղաղակ իմ առ քեզ եկեսցէ, մի՛ դարձուցաներ զերեսս քո յինէն։

Յաւուր նեղութեան իմոյ խոնարհեցո առ իս զունկն

քո, յորում աւուր կարդամ առ քեզ՝ վաղվաղակի լուր ինձ։

Սպառեցան որպէս ծուխ աւուրք իմ, և ոսկերք իմ որպէս խռիւ չորացան։

Հարաւ որպէս խոտ և ցամաքեաց սիրտ իմ, մոռացայ ուտել զհաց իմ ի ձայնէ հեծութեան իմոյ։

Կցեցաւ ոսկր իմ ի մարմին իմ, Նմանեցայ ես հաւալուսն յանապատի։

Եղէ ես որպէս բու յաւերակի, տքնեցայ և եղէ ես որպէս ճնճղուկ միայն ի տանիս։

Նախատեցին զիս թշնամիք զօրհանապազ, և գովիչք իմ ինև երդնուին։

Զմոխիր որպէս հաց կերայ, և զըմպելի իմ արտասուօք խառնեցի։

Յերեսաց բարկութեան սրտմտութեան քո, զի դու բարձրացուցեր և խոնարհեցուցեր զիս։

Աւուրք իմ որպէս հովանի անցին, և ես որպէս խոտ ցամաքեցայ։

Դու Տէր յաւիտեան կաս, և յիշատակ քո ազգէ մինչև յազգ։

Դու յարուցեալ գթասջիր ի վերայ Սիոնի, ժամանակ գթալոյ Նորա հասեալ է ժամ։

Հաճեցան ծառայք քո ընդ քարինս Նորա, և ի հողս նորա գթացին։

Երկիցեն հեթանոսք յանուանէ քումմէ, և ամենայն թագաւորք երկրի ի փառաց քոց։

Շինէ Տէր զՍիոն, և երևեսցի փառօք իւրովք ի նմա։

Հայեցաւ նա յաղօթս խոնարհաց, և ոչ արհամարհեաց զխնդրուածս նոցա։

Գրեսցի այս յազգ յայլ, ժողովուրդ զոր ստացեալ է՝ օրհնեսցէ զՏէր։

Հայեցաւ նա ի բարձանց ի սրբութենէ իւրմէ, Տէր յերկնից յերկիր հայեցաւ։

Լսել զհեծութիւն կապելոց, և արձակել զորդիս մահապարտաց։

Պատմել ի Սիոն զանուն Տեառն, և զօրհնութիւնս Նորա յԵրուսաղէմ։

Ժողովել ժողովրդոց ի միասին, և թագաւորաց ծառայել Տեառն։

Digitized by Google

Պատասխանի ետ Նմա ի ճանապարհի զօրութեան իւրոյ, զնուազութիւն աւուրց իմոց ասա ինձ, և մի՛ հաներ զիս ի կէս աւուրց իմոց. զի ազգէ յազգ են ամք քո։

Ի սկզբանէ Տէր զհիմունս երկրի հաստատեցեր, և գործք ձեռաց քոց երկինք են։

Նոքա անցանեն, և դու կաս և մնաս յաւիտեան։

Ամենեքեան որպէս ձորձս մաշեսցին, որպէս վերարկուս փոխեսցես զնոսա և փոխեսցին։

Բայց դու նոյն իսկ ես, և ամք քո ոչ անցանեն. որդիք ծառայից քոց բնակեսցեն ի Նմա, և զաւակի նոցա յաւիտեան աջողեսցի։

Ընթերցուած ի Զաքարիայ մարգարէէ: ԺԴ. 5:

Եւ եկեսցէ հասցէ Տէր Աստուած իմ և ամենայն սուրբք ընդ Նմա. և եղիցի յաւուր յայնմիկ՝ ոչ եղիցի լոյս. և ցուրտ և պարզ։ Եղիցի օր մի. և օրն այն յայտնի Տեառն, ոչ տիւ իցէ և ոչ գիշեր, և ընդ երեկս եղիցի լոյս։ Յաւուր յայնմիկ բղխեսցէ ջուր կենդանի յԵրուսաղէմ, կէս նորա ի ծովն առաջին, և կէս նորա ի ծովն որ յետոյ. զամառն և զգարուն նոյնպէս եղիցի. և եղիցի Տէր Թագաւոր ի վերայ ամենայն երկրի։ Յաւուր յայնմիկ եղիցի Տէր մի՝ և անուն նորա մի, պատել զամենայն երկիր, զանապատն՝ ի Գաբայ մինչև ցՌեմոն ընդ կողմն հարաւոյ Երուսաղեմի։ Եւ Հռամ ի տեղւոջ իւրում կացցէ. ի դրանէն Բենիամինի մինչև ի տեղի դրանն առաջնոյ. մինչև ի դուռն անկեանցն, և մինչև ցաշտարակն Անամայելի, մինչև ի հնձանս Թագաւորին. և բնակեսցեն ի նմա, և նզովք ոչ ևս լիցին. և բնակեսցէ Երուսաղէմ յուսով։ 11։

Պօղոսի առաքելոյն ի Տիմոթէոսի առաջին թղթոյն է ընթերցուածս։ Զ. 13։

Պատուիրեմ քեզ առաջի Աստուծոյ՝ որ կենդանի առնէ զամենայն, և Յիսուսի Քրիստոսի՝ որ վկայեաց առաջի Պոնտացւոյ Պիղատոսի զբարւոք դաւանութիւնն, պահել քեզ զպատուիրանն անբիծ՝ անարատ, մինչև ի յայտնութիւն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. զոր յիւր ժամանակս ցուցցէ երանելին, և միայն հզօր, Թագաւոր թագաւորաց, և Տէր տերանց. որ միայն ունի զանմա-

հութիւն՝ բնակեալ ի լոյս անմատոյց. զոր ոչ ոք ետես ի մարդկանէ, և ոչ տեսանել կարող է. որում պատիւ և զօրութիւն յաւիտեանս. ամէն: 16:

ՇԱՐԱԿԱՆ ԴԿ

Աղբերացն անապական որ յետ մահուն անմահա-
բար. բղխեալ ի քէն վտակ կրկին ի նորոգումն
կողածնին. բաց ըզբերան իմ յարբուցումն քո արեան
կենարարին. լուա դարձեալ յաւազանին թէ ոչ շնոր-
հաք այլ արտասուօք: Յանմահիդ մեռանելոյ զմեռեալ
հոգիս կենդանացո. Թաղմամբ ի նոր գերեզմանի զթա-
ղումս իմ մեղաց վերածեա. ի գբի ներքնումն իջանելովդ
ի գբոյն մեղաց վերաբերեա. Ի ստուեր մահու քո բնա-
կելով լուսաւորեա և զիս հոգւով: Սիրտ իմ առ քեզ
աղաղակէ Բանդ որ ընդ Հօր ի սկզբանէ. որ կամաւոր
վաոըն մարդկան կրեցեր մարմնով զայս ամենայն. ինձ
լսելի արա ըզձայն յարքայութեանըդ քո կոչման. ընդ
ժողովոցն անդ անդրանկաց օրհնել ըզքեզ միշտ յա-
ւիտեան:

Ջինջ Օրթի

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Յովհաննու: ԺԹ. 17:
Վասն խաչելութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի:

Եւ նոքա առեալ տանէին զնա. և բարձեալ էր ինքն իւր զխաչափայտն, և ելանէր ի տեղին՝ որ անուանէր գագաթան, և կոչէր եբրայեցերէն Գողգոթա. ուր և ի խաչն իսկ հանին զնա, և ընդ նմա երկուս ևս այլս աստի և անտի, և ի միջի զՅիսուս: Գրեաց և տախտակ մի Պիղատոս, և եդ ի վերայ խաչին. և էր գրեալ. Յիսուս Նազովրեցի Թագաւոր Հրէից: Զայն տախտակ ընթերցան բազումք ի Հրէից, զի մօտ էր ի քաղաք անդր տեղին՝ ուր խաչեցաւն Յիսուս. և էր գրեալ եբրայեցերէն, դաղմատերէն և յունարէն: Ասեն ցՊիղատոս քահանայապետքն Հրէից. մի գրեր Թագաւոր Հրէից. այլ թէ նա ասաց՝ Թագաւոր եմ Հրէից: Պատասխանի ետ Պիղատոս. զոր ինչ գրեցին՝ գրեցի: Իսկ զինուորքն իբրև

Digitized by Google

հանին ի խաչ զՅիսուս, առին զհանդերձս նորա և արարին չորս մասունս, իւրաքանչիւր զինուորի մասն. իսկ զպատմուճանն քանզի էր առանց կարանի ի վերուստ փորանկեալ ամենևին, ասեն ցմիմեանս. մի՛ պատառեսցուք զայդ, այլ արկցուք վիճակս ի վերայ դորա ում և ելցէ։ Զի լցցի գիրն որ ասէ. բաժանեցան զհանդերձս իմ յիւրեանս, և ի վերայ պատմուճանի իմոյ վիճակ արկին։ Զինուորքն զայս ինչ գործեցին։ Եւ կային առ խաչին Յիսուսի մայրն նորա, և քոյր մօր նորա Մարիամ Կղէովպա, և Մարիամ Մագդաղենացի։ Յիսուս իբրև ետես զմայրն և զաշակերտն զոր սիրէր՝ զի կայր մօտ, ասէ ցմայրն. կին դու՝ ահա որդի քո։ Ապա ասէ ցաշակերտըն. ահա մայր քո։ Եւ յայնմ ժամանակէ ա՛ռ աշակերտըն զնա առ իւր։ Յետ այսորիկ իբրև գիտաց Յիսուս, եթէ ահա ամենայն ինչ կատարեալ է, զի կատարեսցի գիրն՝ ասէ. ծարաւի եմ։ Եւ անդ կայր աման ինչ լի քացախով. և նոցա սպունգ լցեալ քացախով ընդ լեղւոյ՝ շուրջ եդեալ զմշտկաւ զոպայի, մատուցին ի բերան նորա։ Իբրև ա՛ռ Յիսուս զքացախն հանդերձ լեղւովն՝ ասէ. ամենայն ինչ կատարեալ է։ Եւ խոնարհեցուցեալ զգլուխն՝ աւանդեաց զոգին։ Իսկ Հրեայքն՝ քանզի ուրբաթ էր, զի մի՛ անդէն ի խաչին ագանիցին մարմինքն մինչև ցշաբաթն, զի էր օր մեծ շաբաթուն այնորիկ, աղաչեցին զՊիղատոս զի խորտակեսցեն զբարձս նոցա, և բարձցին։ Եկին զինուորքն, և զառաջնոյն խորտակեցին զբարձս, նոյնպէս և զմիւսոյն որ ընդ նմա ի խաչ ելեալ էր։ Բայց իբրև եկին առ Յիսուս, և տեսին զի այն ինչ մեռեալ էր, ոչ խորտակեցին զբարձս նորա. այլ մի ոմն ի զինուորացն տիգաւ խոցեաց զկողս նորա, և վաղվաղակի ել արիւն և ջուր։ Եւ որ ետեսն՝ վկայեաց, և ճշմարիտ է վկայութիւն նորա. և նա գիտէ՝ թէ ճըշմարիտ ասէ, զի և դուք հաւատասջիք։ Այս եղև, զի լցցի գիրն, եթէ ոսկր նորա մի՛ փշրեսցի։ Եւ դարձեալ միւս գիր ասէ, եթէ հայեսցին ի նա՝ յոր խոցեցինն։ 37։

Եւ ապա երգեն Սուրբ Աստուած, սուրբ և հզօր...։

Եւ դնեն զսուրբ խաչն և զաւետարանն ի վերայ գերեզմանին, և խունկ ածեն։ Եւ երկիր պագանեն ամենեքեան, և համբուրեն զխաչն և զաւետարանն, և ասեն։

ՇԱՐԱԿԱՆ ԲԿ

Խաչի քո Քրիստոս երկրպագանեմք. եւ զթաղումն քո մեծացուցանեմք. եւ սուրբ զյարութիւնդ քո փառաւորեմք. եկայք հաւատացեալք. երկրպագեսցուք Քրիստոսի Աստուծոյ մերոյ. վասն զի եկն ի ձեռն խաչին իւրոյ շնորհեաց պարգեւս աշխարհի։

Ակ. Փառք սուրբ խաչին անեղական. սուրբ Սրբ. նի անեղական. սուրբ յարութեանն անճառելական։ Նշանեցաւ առ մեզ լոյս երեսաց քոց Տէր եւ ետուր ուրախութիւն սրտից մերոց։ Ի պտղոյ ցորենոյ գինւոյ եւ ձիթոյ իւրեանց լցուցեր զնոսա։ Փառք սուրբ։ Փառք եւ երկրպագութիւն Հօր եւ Որդւոյ եւ Սրբոյ Հոգւոյն. այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից ամէն։ Փառք սուրբ խաչին անեղական. սուրբ Սրբ.։

Բկ. Խաչն կենարար. որ եղեւ մեզ փրկութիւն. Աստուած ամենեքեան զքեզ բարեբանեմք։ Որ ի Հօրէ լուսոյ լոյս ճառագայթեալ ի յերկիր եւ գաւազան զօրութեան հաւատացելոց. Աստուած։ Որ լուսափայլ ծագմամբ հրաշափառապէս զմեզ ցուցար ի յօգնութիւն ընդդէմ թշնամւոյն. Աստուած։

Ես— [illegible] Ծարաւեցաւ Տէրն [illegible]

Զկնի Քար. Սուրբ խաչիւս։ Աղ. Պահպանեա։ Հայր։

---

ՑԵՐԵԿՈՑԻՆ

Ի [illegible] Ես առ Աստուած։ Խոնարհեցո։ Ապրեցո։ Լոյս զուարթ։

ՄԵՍԵԴԻ

Ետուն ի կերակուր ինձ լեղի, եւ ի ծարաւ իմ արբուցին ինձ քացախ։



Digitized by Google

Եղիցին սեղանք նոցա առաջի նոցա յորոգայթ, ի հատուցումն, և ի գայթագղութիւն։

ԸՆթերցուած յԵրեմիայ մարգարէէ։ ԺԱ. 18:

Տէր ծանո ինձ և ծանեայց. յայնժամ տեսից։ 488։

ԸՆթերցուած յԵսայեայ մարգարէէ: ԾԲ. 13:

Ահաւասիկ ի միտ առցէ մանուկ իմ զօրասցի։ 479։

ՍԱՂՄՈՍ ԻԱ. Է Բլ

ԿԹ. Բաժանեցան զհանդերձս իմ ի մէջ։ 476։

Ուղիղ եղիցին աղաչանք իմ. Որպէս խունկ առաջի քո Տէր։

Տարածումն ձեռաց իմոց. Պատարագ երեկոյի։

Քարոզ Աղաչեսցուք։

ԶՍուրբ Աստուածն տէրն է ձայնիւ անլռելի փառաբանեսցուք և խնդութեամբ։ Իւր փառաւորեալ ոչ տէր։

ՀԱՄԲԱՐՁԻ ԴՁ. ՍՏ.

Սկայք հաւատացեալք երկրպագեսցուք սուրբ Երրորդութեանն. լուսոյն որ ընդ Հօր է յէութեան. ի քահանայից դատապարտեալ եկեալ ի խաչ ելանել. անճառ թագաւորն։ Զոր երկինք ոչ բաւէին տանել. զփառս պատուհասի ունել բարձեալ. եւ եկեալ ի տեղի կառափելոյն. ի խաչ ելանել. անճառ։ Հիացեալ պետութեանց երկնից. ընդ թաղումն Տեառն ի նոր գերեզմանի. քննողին որ անմահն է յէութեան. վասն արարածոց փրկութեան ըմպելին ճաշակեաց. անճառ։

Զնոյն Քար. Վասն խաղաղութեան։ Աղ. Հայր գթած։

Զնոյն ողորմեա տուն ՍԱՂՄՈՍ ԺԵ. Է Բլ

ԿԹ. Զի ոչ թողցես զանձն իմ ի դժոխս, և ոչ տացես սրբոյ քում տեսանել զապականութիւն։

Փխ. Պահեա զիս Աստուած, զի ես ի քեզ յուսացայ. ասացի Տեառն, Տէր իմ ես դու, և բարիք իմ չեն քեզ ինչ պիտոյ։

Սրբոց քոց որ են յերկրի քում, սքանչելի արարեր զամենայն կամս իմ ի նոսա։

Յաճախեցին հիւանդութիւնք նոցա․ յետ այսորիկ ապա վաղվաղեցին։

Ոչ ժողովեցայց ի ժողովս նոցա յարեանց, և ոչ յիշեցից զանուանս նոցա ի շրթունս իմ։

Տէր բաժին ժառանգութեան իմոյ և բաժակի իմոյ, դու ես որ այսրէն դարձուցանես զժառանգութիւն իմ յիս։

Վիճակք ելին ինձ ընդ ընտիրս, և ժառանգութիւն իմ հաճոյ եղև ինձ։

Օրհնեցից զՏէր որ իմաստուն արար զիս․ մինչ ի գիշերի ևս խրատեցին զիս երիկամունք իմ։

Յառաջագոյն տեսանէի զՏէր առաջի իմ յամենայն ժամ, զի է ընդ աջմէ իմմէ զի մի՛ սասանեցայց։

Վասն այսորիկ ուրախ եղև սիրտ իմ, և ցնծացաւ լեզու իմ, ևս և մարմին իմ բնակեսցէ յուսով։

Զի ոչ թողցես զանձն իմ ի դժոխս, և ոչ տացես սրբոյ քում տեսանել զապականութիւն։

Ցուցեր ինձ զճանապարհս քո կենաց, լցուցեր զիս ուրախութեամբ երեսաց քոց ի քաղցրութենէ վայելչութեան աջոյ քո մինչև իսպառ։

ԸՆԹերցուած յԱռակաց: իմաստ. բ. 1:

Խորհեցան յանձինս իւրեանց զանուղղայս և ասեն․ սակաւ և ցաւագին են կեանք մեր, և ոչ գոյ բժշկութիւն ի վախճանի մարդոյ, և չերևեցաւ որ դարձաւ ի դժոխոց։ Զի յանկարծակի իմն եղաք, և յետ այսորիկ լինիցիմք իբրև զչեղեալք։ Զի իբրև զծուխ է շունչ յռնգունս մեր, և իբրև զկայծակն բանն ի շարժման սրտի մերում․ յորոյ շիջանելն՝ մոխիր լինի մարմինն, և ոգին սփռի իբրև զօդ թոյլ։ Եւ անունս մեր մոռասցի ժամանակաւ, և ոչ ոք յիշատակեսցէ զգործս մեր։ Անցցեն կեանք մեր իբրև զհետս ամպոյ, և իբրև զշամանդաղ ցրուեսցին հալածեալ ի ճառագայթից արեգական և ի տապոյ նորա ծանրացեալ։ Զի անցք ստուերի են կեանք մեր, և չիք խափան վախճանի մարդկան, զի կնքեցաւ և ոչ ոք դարձուցանէ։ Արդ եկայք և վայելեսցուք ի բարութիւնըս որ կանս, և վարեսցուք արարածովքս զբաղեալք իբրև ի մանկութեան։ Պէսպէս գինեօք և անոյշ իւղովք լցցուք, մի՛ անցցէ առ մեօք ծաղիկ գարնայնոյ։ Յոլո-

Digitized by Google

րիւք վարդից պսակեսցուք՝ մինչև թառամեալ իցեն։ Մի՛ ոք ամենևին լիցի անմասն ի մեծամեծար ուրախութենէս մերմէ. յամենայն տեղիս թողցուք զնշանակ ուրախութեան. զի այն է բաժին մեր, և այն վիճակ։ Բռնադատեսցուք զտնանկն անիրաւութեամբ, մի՛ խնայեսցուք յայրին, ՝մի՛ խորշեսցուք ի բազմաժամանակեայ ալեաց ծերոյն։ Եւ օրէնս արդարութեան՝ բռնութիւն մեր եղիցի. զի տկարութիւն անպիտան յանդիմանի։ Դարանակալ լիցուք արդարոյն՝ զի դժպհի եղև մեզ, և հակառակ կայ գործոց մերոց, և նախատինս դնէ մեզ զյանցանս օրինացն, և բամբասէ զմեզ մեղօք մանկութեան մերոյ։ Խոստանայ ունել զգիտութիւն Աստուծոյ. և Որդի Աստուծոյ զանձն իւր անուանէ. և եղև ի յանդիմանութիւն մտաց մերոց։ Ծանր է մեզ և տեսանելն զնա, զի աննման են այլոց կեանք նորա և այլազգի շաւիղք նորա։ Ի գարշութիւն համարեցաք նմա, և խորշի ի ճանապարհաց մերոց՝ իբրև ի պղծութեանց. երանէ զվախճան արդարոց, և հպարտացեալ՝ կոչէ հայր զԱստուած։ Տեսցուք թէ ճշմարիտ իցեն բանք նորա, և փորձեսցուք զվախճան նորա։ Եթէ իցէ արդարև Որդի Աստուծոյ, պաշտպանեսցէ նմա, և փրկեսցէ զնա Աստուած ի ձեռաց հակառակորդաց։ Թշնամանօք և գանիւք խոշտանգեսցուք զնա, զի գշափ առցուք զհեզութեան նորա, և խելամուտ լիցուք անոխակալութեան նորա։ Մահու խայտառակութեան դատեսցուք զնա. և թէ լինիցի՛ այցելութիւն նմա ի բանից իւրոց։ Զայս խորհեցան և խաբեցան. զի կուրացոյց զնոսա չարութիւնն իւրեանց, և ոչ ծանեան զխորհուրդս Աստուծոյ, և ոչ վարձուց յոյսն կալան սրբութեան, և ոչ ընտրեցին զպատիւ ոգւոց անարատից։ 22։

ԸՆԹերցուած ի Զաքարիայ մարգարէէ : ԺԲ . 8 :

Եւ եղիցի յաւուր յայնմիկ պաշտպանեսցէ Տէր ամենայն բնակչաց Երուսաղեմի. և եղիցի որ տկարն իցէ ի նոսա յաւուր յայնմիկ՝ իբրև զԴաւիթ, և տունն Դաւթի՝ իբրև զտունն Աստուծոյ, իբրև զհրեշտակ Տեառն առաջի նոցա։ Եւ եղիցի յաւուր յայնմիկ խնդրեցից բառնալ զամենայն ազգս եկեալս ի վերայ Երուսաղեմի. և հեղից ի վերայ տանն Դաւթի և ի վերայ բնակչաց Երուսաղեմի

հոգի շնորհաց և գթութեան։ Եւ հայեսցին առ իս փոխանակ կաքաւելոյն, և կոծեսցին ի վերայ նորա կոծ իբրև ի վերայ սիրելւոյ, և աշխարհեսցեն աշխար իբրև ի վերայ անդրանկան։ Յաւուր յայնմիկ սաստկասցի կոծ յԵրուսաղէմ իբրև զկոծ Նռնենեաց կոտորելոց ի դաշտի, և կոծեսցի երկիր ըստ ազգս ազգաց առանձինն։ Ազգ տանն Դաւթի առանձինն, և կանայք նոցա առանձինն. ազգ տանն Նաթանայ առանձինն, և կանայք նոցա առանձինն. ազգ տանն Ղևեայ առանձինն, և կանայք նոցա առանձինն. ազգ տանն Շմաւոնի առանձինն, և կանայք նոցա առանձինն։ Ամենայն ազգք մնացեալք առանձինն, և կանայք նոցա առանձինն։ 14։

Պետրոսի առաքելոյն ի կաթողիկեայց առաջին թղթոյն է ընթերցուածս։ Գ. 17։

Զի լաւ է բարեգործաց, եթէ կամիցին ըստ Աստուծոյ կամացն չարչարել՝ քան չարագործացն. զի և Քրիստոս միանգամ վասն մեղաց ի վերայ մեր մեռաւ, արդարն ի վերայ անարդարոց. զի զմեզ մերձեցուսցէ առ Աստուած. զի թէպէտ և մեռաւ մարմնով, այլ կենդանի է հոգւով։ Որով և ոգւոցն որ էին ի բանտին, երթեալ քարոզեաց, երբեմն ապստամբելոցն, յորժամ ներէր նոցա Աստուծոյ երկայնմտութիւնն յաւուրս Նոյի յորս տապանն կազմէր. յորս նուազունք, այս ինքն՝ ոգիք իբրև ութ ապրեցան ի ջրոյն։ 20։

Ձայնն– Ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա։

Ընդ երեկոյս հանգիցեն լալիք, առաւօտուց եղիցի ուրախութիւն։

Ձնէ Ալէլուիա Օրթի

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի։ Իէ. 57։
վասն թաղման Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։

Եւ իբրև երեկոյ եղև, եկն այր մի մեծատուն յԱրիմաթեայ, որում անուն էր Յովսէփ, որ աշակերտեցաւ իսկ Յիսուսի. սա մատուցեալ առ Պիղատոս խնդրեաց զմարմինն Յիսուսի. յայնժամ Պիղատոս հրամայեաց տալ զմարմինն։ Եւ առեալ զմարմինն Յովսէփ՝ պատեաց սուրբ կտաւովք, և եդ ի նոր գերեզմանի՝ զոր փորեաց ի վիմի. և թաւալեցուցեալ կափարիչ դրան գերեզմա-

Digitized by Google

Նիրն վէմ մի մեծ՝ գնաց: Անդ էր Մարիամ Մագդաղենացի, և միւս Մարիամն, նստէին հանդէպ գերեզմանին: 61:

Եւ ասա Երգէն Սուրբ Աստուած, սուրբ և հզօր...:

Եւ ասա Նախատօնակ օրս, զի [illegible] Տեառն է, ասել

ՇԱՐԱԿԱՆ ԲԶ

Պարգևատուն ամենեցուն: Իւր տօքն: 503:

Եւ Սարկաւագն տէրունի խնդրեսցուք: Կեցո. ի Բժ—:

Աղ. Քում ամենազօր և հրաշալի թաղմանդ:

Եւ դնեն շիրմն և [illegible] ի վերայ [illegible] և առեն խաչի քո Քրիստոս: 497: Եւ համբուրեն զխաչն: Ապա ասէ տաղ ողբոյն:

Աստուածածի՛ն կոյսըն Մարիամ
Կայր առ խաչի՛ն Միածնի՛ն.
Հեղոյր արտօսր կըսկըծմամբ սըրտին.
Եւ զայս ասէր ձայնս ողորմելին.
Այ ոհ այ ոհ. զքեզ ի խաչ տեսողիս
Համբերս ցաւոց մօրդ այրած սըրտի:
Որդեա՛կ որդեա՛կ Յիսուս իմ որդեակ.
Աչացըս լոյս մօրըս քո կուսի.
Իմ Միածինդ գառն անպարտական.
Ընդ որ մեղաց կաս այժմ ի խաչին: Այ ոհ:
Ե՛կ Յովհաննէ՛ս եկ որդեակ եւ դու.
Իմ Միածնի՛ն սիրուն աշակե՛րտ.
Առցուք զմարմինն ողջագուրեսցուք
Եւ արտասուօք ընդ նա թաղեսցուք. Այ ոհ:

Քարոզ. Սուրբ խաչիւս: Աղ. Պահպանեա: Հայր մեր:

Եւս և յաւուր [illegible] Զատկի յետ Նորաստեղծեալն ասա Խաչամբույր: 497:

# ԱԻԱԳ
# ՇԱԲԱԹ · ԴԿ

## Ի ԳԻՇԵՐԻ

### ԿԱՆՈՆԱԳԼՈՒԽ ԱՁ · ըստ հնգ. Դատեալն ասա ։

### ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԲՁ

ՊԱՐԳԵՒԱՏՈՒՆ ամենեցուն այսօր · խնդրի պարգեւս ի Պիղատոսէ · եւ մերկողն ըղլոյս որպէս զօթոց հանւանի պատել ի Յովսեփայ ։ Կենդանատուն ամենեցուն այսօր · դնի ի նոր գերեզմանի · եւ զանձն անմահութեան կնքի մատանեաւ քահանայիցն ։ Արարածոց փրկութիւն Քրիստոս այսօր · եդաւ ի նորափոր վիմի · զոր օրհնեն զօրք երկնից երգով պահպանի ի զինուորացն ։

✝ Կենդանին յաւիտենից Քրիստոս այսօր · խնդրի որպէս մեռեալ ի Պիղատոսէ · եւ մերկութեան ծածկոյթն Ադամայ · յանձն առնու պատել ի Յովսեփայ ։ Անմահութեանց տուող Քրիստոս այսօր · ի հող մահու խոնարհեցաւ · եւ բնակեալն ի լոյս յանմատոյց թաղեցաւ մարմնով ի սիրտ երկրի ։ Արեգակն արդարութեան Քրիստոս այսօր · եդաւ ի գրի ստուերականի · եւ փառացըն հօր ճառագայթ ծածկեցաւ վիմով ի մէջ երկրի ։

✝ Կուսածին մարմնով Քրիստոս այսօր · դնի ի կոյս գերեզմանի · եւ լուծիչն երկանց դրոշմոխոց մատանեաւ կնքի քահանայիցն ։ Արթուն բնութեամբ արարիչն ամենեցուն այսօր · ննջէ ի մէջ մահացելոց · որ պահէին զինքն առ ի սրայէլ անքուն պահպանի ի զինուորացն ։

Որ թագաւորդ ես թագաւորաց Քրիստոս ի ծառայէ դատապարտեալ · համբերելով վասըն մեր · երկայնամիտ Տէր քեզ փառք ։ Որ պատուական խաչիւըդ

քո Քրիստոս և սուրբ արեամբըդ քո հեղմամբ. կեցուցանել ըզմեզ կամեցար. ‖ Երկայնամիտ Տէր քեզ փառք։ Որ մարդասիրապէս վասն ամենեցուն ամենայնի համբերեցեր. և ի մահու ըզմահ կոխեցեր. Երկայնամիտ։

Արծաթսիրութեամբըն մոլեալ Յուդա. զիւր ըզմեծ ըզվարդապետն ընդ երեսուն արծաթոյ հրէիցըն մատնէր։ Ընդ որում ես համբուրեցից ասէ ըզնա կալարուք· ով համբոյր նենգութեան նըշան և առիթ մահու։ Մերկացաւ յինքենէ զաստուածային սուրբ Հոգին. և ըզգեցաւ ըզսատանայ որպէս հանդերձ արկաւ զիւրեաւ։

Որ նըստիս ի քրովբէս Աստուած Բանդ. այսօր վասըն մեր խոնարհութեամբ նըստար ի լերինըն ձիթենեաց. ‖ Օրհնեմք ըզքեզ անդադար երգով։ Որ համագոյդ ես խորհըրդոցըդ հայրենի. աշակերտաց քոց ծանուցեր ըզխորհուրդ քո գալըստեանն. օրհնեմք։ Որ ամենայնց ես արարիչ և ըստեղծիչ կենդանութեան. այսօր ըզծածկեալ խորհուրդ Երրորդութեանըդ յայտնեցեր եկեղեցւոյ սըրբոյ քո. օրհնեմք։

Հգ. Սոյն և նըման Հօր և Որդւոյ Հոգիդ անեղ և համագոյ. բըղխումըն Հօր անքըննաբար առող յՈրդւոյ անճառաբար. ի վերնատունն այսօր իջեր զհոգիդ շնորհաց քոց արբուցեր. ‖ սուրբ և մեզ ողորմութեամբ ի բաժակէդ իմաստութեան։ Էից ստեղծող արարածոց որ շըրջէիր ի վերայ ջրոց. նոյն և ի ջուրսն աւազանին ի շնորհել մեզ քում էակցին. զըգուես սիրով աղաւնակերպ զմարդիկ ծնանիս աստուածակերպ. սուրբ։ Բարուն վերնոցն իմանալեաց և ըստորին այսըր զգալեաց. որ մարգարէս տաս ի հովուաց և առաքեալս ի

ձըկնորսաց. աւետաւոր ըզմաքսաւորս քարոզ բանի քում զհալածողս. ա՟րբա ։

ՀՆ. Ի ձայն փողոյ գալըստեան քո Տէ՟ր ամենայն հոգիք զարթիցեն. կալ ի դատաստանի քում Քրիստոս Աստուած մե՟ր ։ Յորժամ հընչէ բարբառն ահագին և հարկանի փող յարութեան մերոյ. և մեք գոչելով ասեմք փառք գալըստեան քո Տէ՟ր ։ Յորժամ առնես հատուցումըն Տէր և սուրբք քո պարծեսցին ի քե՟զ. և մեզ շնորհեսցես Փրկիչ կալ ի յաջմէ քումմէ ։

ՄԾ. Զքեզ Հայր յառաջ քան զյաւիտեանս բարբառնեն դասք անմարմնոց հրեշտակաց. ձայնիւ երգով գոչեն և աղաղակեն. ‖ Աստուած աստուծոց և Տէ՟ր տերանց Փրկիչ գոլո՟վ ։ Առաքեցեր զքո Միածինըդ մարմնանալ ի սուրբ կուսէն. և անարատ ծընանիլ յորովայնէ անապական. բառնալով ըզմե՟ր նեղութիւնս. Աստ ։ Շնորհք բարի յերուսաղէմ երեւեցաւ հեթանոսաց. զի արարիչն յաւիտենից տըղայ եղեալ յորդեգրութիւն կենաց կոչէ. Աստուած ։

ԻԶ. Գլուխ սուրբ հաւատոյ և փայտ կենաց մարդկան յայտնեալ. զոր տեսեալ այսոյն պըղծոյ կործանեցաւ անկանգնելի. ‖ աղաչեմք սովաւ Փրկիչ պահպանեա զանձինս մե՟ր ։ Դողացաւ թշնամին ընդ յայտնել սըրբոյ խաչին. և ի յահէ փառաց նորա կործանեցաւ յանդունդս երկրի. աղաչեմք ։ — Փառք Հօր ։ Երկինք ցընծային և երկիրս ուրախանայր. քանզի Փրկիչ ցուցաւ սուրբ խաչն և լուսատու տիեզերաց. աղաչեմք ։

— Այժմ և միշտ ։ Ցընծութիւն արարածոց Քրիստոս այսօր. արտասուելի որպէս մեռեալ ի տըրտմագգեցից. և բուրումն անմահութեան խընկի ի զգաստից իւղաբերից ։

Մաղթանք. Փառք հրաշափառ թաղման քո Տէր:
Ալէլուիա. Առաւօտ շաբաթուն. Եղիցին զիս ի գրի:

---

## ՅԱՐԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԳԶ ձայն ———:

Զքեզ օրհնեմք Թագաւոր յաւիտենից անմահ. Աստուած հարցըն մերոց: Զոր ոչ բնութիւնք արարածոց զԱստուած տանիւր. մահուամբ սահմանեալ դընի ի նոր գերեզմանի. Նորոգէր զիս ընդունելով մահ ծրդ. || գովեմք ըզքեզ Տէր հարցըն մերոց: Որ անփոփոխ գրով համառօտեալ քարոզես. կընքի մատանեաւ անկորուստ պահելով ըզմեզ զհաւատով Երրորդութեան ծնող. գովեմք:

Գ. Ըզ Տէր օրհնեցէք և || բարձր արարէք զնա յաւիտեան: Օրհնեցէք զՔրիստոս թագաւորն յիմանալի զօրացն անհիւ պատուեալ և բարձր: Օրհնեսցէ Զանյաղթելի զթագաւորն որ պահի ի զինուորաց գանձն անմահութեան և բարձր:

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԳԶ

Աստուածածին երկնային դուռն աստուածային: 379:

ՈՂՈՐՄԵԱ ԳԶ

Որ բաշխողդ ես բարութեանց և պարգևատու արարածոց քոց. այսօր հանեցար խնդրել ի պարգևի մասին ի Պիղատոսէ. զի և մեզ շնորհեսցես պարգևս ողորմութեան քո: Որ զանձառ ըզլոյս փառաց իբրև զօթոց ըզքեզ արկեր. այսօր անձառ խոնարհութեամբ պատեցար ի Յովսեփայ ի գերեզմանի տըքնեալ. զի զհնութիւն մեղաց մերոց նորոգեսցես ի կեանս անմահս: Որ յէութեանդ ես ընդ Հօր անպարագրելի Բանդ. այսօր մատանեաւ քահանայիցըն պարագրիլ ի յանձն առեր անկողոպտելի գանձ. զի ըզմեզ փրկեսցես ի յանցանաց մեղաց մերոց:

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԳԶ

Յովսէփ ճշմարիտ և արդար. հայցէր ի Պիղատո-

ւէ զհամասարակաց ընդպարգեւատուն. որ տրւաւ ըմ մեզ զանձն անկողոպտելի ։ Պատեա՞ց՞ւ սուրբ կըտաւովք զմարմինըն տէրունական զարկողն ըղլոյս որպէս զօթոց. որ զգեցոյց ըմ մեզ զգեստ անկողոպտելի ։ Եդա՞ց՞ւ ի նորափոր ի վիմի եւ մատանեաւ կընքեցաւ որ զնախա-տեղծըն կենդանացոյց. եւ զմարդկան կապանըս մա-հու եղոյծ ։

Ա——օթ—— Երգ

Եդին զիս ի գբի ներքնումն, ի խաւարի և ի ստուերս մահու ։

Յիս հաստատեցաւ սրտմտութիւն քո, զամենայն զբօսա-նըս քո ածեր ի վերայ իմ ։

Քարոզ. Փառաւորեսցուք ։

. ՄԱՆԿՈՒՆՔ ԴԿ. ՍՏ.

Յովսէփ քեզ հաւատացեալ. Պիղատոսի անդրե-ւէր. շնորհեալ զտէրունեանդ մարմին ։ Զանապական զաստուածացեալ մարմինդ. պատեալ սուրբ կըտաւովք եւ եդ ի գերեզմանի ։ Ո՞ր արարիչդ ես արարածոց. հանգուցեալդ ի քերովբէս. վիմով կընքեցար յերկրի ։

Քոր. Վասն խաղաղութեան ։ Աղ. Սուրբ ես Տէր ։

Ա—— ՍԱՂՄՈՍ ՁԷ. ——ղբ—յ—ն.

Կց. Եդին զիս ի գբի ներքնումն, ի խաւարի և ի ստուերս մահու ։

Փխ. Տէր Աստուած փրկութեան իմոյ, ի տուէ ։ 487 ։

Ջհնի Օրթի

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի ։ Իէ. 62 ։

Վասն Թաղման Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ։

Եւ ի վաղիւ անդր՝ որ է յետ ուրբաթուն, ժողովեցան քահանայապետքն և փարիսեցիքն առ Պիղատոս, և ա-սեն. տէր, յիշեցաք զի մոլորեցուցիչն այն ասէր մինչ կենդանին էր, թէ յետ երից աւուրց յառնեմ։ Արդ հրա-մայեա զգուշանալ գերեզմանին մինչև ցերիս աւուրս,

ղուցէ եկեալ աշակերտքն գիշերի՝ գողանայցեն զնա, և ասիցեն ժողովրդեանն, թէ յարեաւ ի մեռելոց, և լինիցի յետին մոլորութիւնն չար քան զառաջինն։ Ասէ ցնոսա Պիղատոս. ունիք զզօրականն, երթայք զգուշացարուք որպէս և գիտէք։ Եւ նոքա երթեալ զգուշացան գերեզմանին, և կնքեցին զվէմն հանդերձ զօրականօքն։ 66։

Երգ. Տէրն յետ ստեղծ։ Քար. Խնդրես։ Կեցո։ Է Նի։
Աղ. Քում ամենազօր և հրաշալի թաղմանդ։

---

## ՑԵՐԵԿՈՑԻ

Ճրագալուցի տօնի Զատկին՝ յետն ժամն ժողովին յեկեղեցին, և լուցանեն կանթեղս։ Եւ առնեն զճաշու ժամն։ Իսկ Խոնարհեցո և Ապրեցո ոչ գոյ։

Այլ լինի ճաշոյն սկսանելն յաջակողմեան դասէն, բայց յետն

ՍԱՂՄՈՍ ՃԺԲ

Կց. Եղիցի անուն Տեառն օրհնեալ, յայսմ հետէ մինչև յաւիտեան։

Փխ. Օրհնեցէք մանկունք զՏէր, և օրհնեցէք զանուն Տեառն։

Եղիցի անուն Տեառն օրհնեալ, յայսմ հետէ մինչև յաւիտեան։

Յարևելից մինչ ի մուտս արևու օրհնեալ է անուն Տեառն։

Բարձր է ի վերայ ամենայն ազգաց Տէր, և յերկինս են փառք նորա։

Ո՞վ է որպէս Տէր Աստուած մեր, ի բարձունս բնակեալ, և զխոնարհս տեսանէ յերկինս և յերկրի։

Յարուցանէ զաղքատս յերկրէ, և բարձր առնէ զտառապեալս յաղբևաց։

Նստուցանէ զնոսա իշխանս ընդ իշխանս ժողովրդեան իւրոյ։

Բնակեցուցանէ զամուլն ի տան ուրախամիտ, որպէս մայր որդւովք բերկրեալ։

ՇԱՐԱԿԱՆ ԳՁ

Ա՛յսօր աստուածու՛թի՛ւնըն զուարճանա՛յ նո՛ր հաստատելով զերկնի՛ր. պա՛րըք սու՛րբ փառաբանե՛ն զը՛մարթնոյ.

*Եւ մեք ձայնիւ օրհնութեամբ զարդարեսցուք սուրբ ըղ-
տօնս ։ Այսօր եւ մեք ցընծամք տօնիւս ընդհանուր
հրնչմամբ. մեծապէս փայլմամբ երեւեցաւ աշխարհի. առ
Աստուած գոհութիւնք ընթանան պատմեն անդադար
զբան կենդանի։ Խնդա եւ զուարճացիր եկեղեցի.
կոյս սուրբ և հարսն երկնաւոր փեսային. ահա տեսա-
նեմք զծեալն ըզՔրիստոս գոլով առ քեզ լոյսն հե-
թանոսաց ։*

*Քար. Եւ ես խաղաղութեան։ Քահ. Օրհնութիւն և փառք։*

Աղ. ՍԱՂՄՈՍ ՃԺԷ. Է ՐԻ

48. Այսօր է զոր արար Տէր. եկայք ցնծասցուք և ուրախ եղիցուք ի սմա ։

Փխ. Խոստովան եղերուք Տեառն՝ զի բարի է, զի յաւիտեան է ողորմութիւն Նորա ։

Ասասցէ տունն Իսրայելի՝ զի բարի է, զի յաւիտեան է ողորմութիւն Նորա ։

Ասասցէ տունն Ահարոնի՝ զի բարի է, զի յաւիտեան է ողորմութիւն Նորա ։

Ասասցեն երկիւղածք Տեառն՝ զի բարի է, զի յաւիտեան է ողորմութիւն Նորա ։

Ի նեղութեան իմում ես առ Տէր կարդացի, և լուաւ ինձ յանդորր ։

Տէր է իմ օգնական և ես ոչ երկեայց. զի՞ արասցէ ինձ մարդ ։

Տէր է իմ օգնական, և ես տեսից ի թշնամիս իմ ։

Բարի է յուսալ ի Տէր քան յուսալ ի մարդիկ. բարի է յուսալ ի Տէր քան յուսալ յիշխանս ։

Ամենայն ազինք շրջեցան զինև, և անուամբ Տեառն յաղթեցի նոցա ։

Շրջելով շրջեցան զինև, պաշարեցին զիս ի միասին. և անուամբ Տեառն վանեցի զնոսա ։

Շուրջ եղեն զինև որպէս մեղուք, վառեցան բորբոքեցան որպէս փուշք ի հուր, և անուամբ Տեառն մերժեցի զնոսա ։

Ի մերժելն դրդուեցայ և եղէ մերձ ի գլորել, և Տէր ընկալաւ զիս ։

Digitized by Google

Զօրութիւն իմ և օգնութիւն իմ Տէր, և եղև ինձ ի փրկութիւն ։

Ձայն ցնծութեան փրկութեան ի յարկս արդարոց ։

Աջ Տեառն արար զօրութիւն, աջ Տեառն բարձր արար զիս, և աջ Տեառն արար զօրութիւն ։

Ոչ մեռայց, այլ կեցից և պատմեցից զգործս Տեառն։

Խրատելով խրատեաց զիս Տէր և ի մահ ոչ մատնեաց ։

Բացէք ինձ զդրունս արդարութեան՝ զի մտից ընդ այն, և խոստովան եղէց Տեառն ։

Այս դուռն Տեառն է, և արդարք մտանեն ընդ սա։

Խոստովան եղէց քեզ Տէր, զի լուար ինձ, և եղեր ինձ ի փրկութիւն ։

Վէմն զոր անարգեցին շինողքն, նա եղև գլուխ անկեան ։

Ի Տեառնէ եղև այս, և է սքանչելի առաջի աչաց մերոց ։

Այսօր է զոր արար Տէր, եկայք ցնծասցուք և ուրախ եղիցուք ի սմա ։

Ո Տէր փրկեա, ո Տէր առաջնորդեա. օրհնեալ որ գալոցդ ես յանուն Տեառն, և օրհնեցաք զքեզ ի տանէ Տեառն ։

Տէր Աստուած մեր երևեցաւ մեզ, արարէք տօնս ուրախութեան կանխաւ՝ մինչև յանկիւնս սեղանոյ ։

Աստուած իմ ես դու՝ խոստովան եղէց քեզ, Աստուած իմ ես դու՝ և բարձր արարից զքեզ ։

Խոստովան եղէց քեզ Տէր, զի լուար ինձ, և եղեր ինձ ի փրկութիւն ։

Խոստովան եղերուք Տեառն, զի բարի է զի յաւիտեան է ողորմութիւն Նորա ։

Եւ ապա Եղանակաւորն կամ աւագերէցն ընթեռնու շարական

Ընթերցուած ի Ծննդոց: Ա. 1:

Ի սկզբանէ արար Աստուած զերկին և զերկիր ։ 347 ։

Աղօթք հանդերձ ծունր դնելով զՏէր աղաչեսցուք ։ Քահ. Տէր ողորմեա ։ Երէցն կրկնէ ։

Քար. Եւ եւս խաղաղութեան ։ Քահ. Օրհնութիւն և փառք։

Ընթերցուած ի Ծննդոց։ ԻԲ. 1։

Եւ եղև յետ բանիցս այսոցիկ փորձեաց ։ 430 ։

Digitized by Google

Աղօթք հանդերձ ծունր դնելով զՏէր աղաչեսցուք։ Քահ. Տէր ողորմեա։ Երիցս կրկնէ։

Քոր. Եւ ևս խաղաղութեան։ Քահ. Օրհնութիւն և փառք։

Ընթերցուած յԵլից։ ԺԲ. 1։

Եւ խօսեցաւ Տէր ընդ Մովսէսի և ընդ Ահարոնի յերկրին Եգիպտացւոց, և ասէ. ամիսս այս եղիցի ձեզ սկիզբն ամսոց, առաջին եղիցի ձեզ յամիսս տարւոյ։ Խօսեաց ընդ ամենայն ժողովրդեան որդւոցն Իսրայելի և ասասցես. ի տասներորդում ամսեանս այսորիկ առցեն իւրեանց իւրաքանչիւր ոչխար ըստ տանս ազգացն իւրեանց, ոչխար ըստ երդ։ Եւ եթէ սակաւք իցեն ի տանն՝ որպէս թէ չիցեն բաւական լինել ոչխարին, առցէ ընդ իւր զդրացի իւր և զընկեր իւր ըստ մարդաթուի. իւրաքանչիւր ըստ բաւականի իւրում համարեսցի յոչխարն։ Ոչխար կատարեալ՝ արու, տարևոր, անարատ լիցի ձեզ. յօդեաց և յայծեաց առնուցուք. և եղիցի ձեզ պահեալ մինչև ի չորս և ի տասն աւուր ամսոյս այսորիկ. և զենցեն զնա ամենայն բազմութիւն ժողովրդեան որդւոցն Իսրայելի ընդ երեկս. և առցեն յարենէ անտի և դիցեն ի վերայ երկուց սեմոցն և բարաւորին տանցն յորս ուտիցեն զնա ի նոսա։ Եւ կերիցեն զմիսն ի գիշերիս յայսմիկ խորովեալ հրով. և բաղարջ ընդ եղեգի կերիցեն. և ոչ ուտիցէք ի նոցանէ հում, և ոչ պախ եփեալ ջրով, այլ խորովեալ հրով. զգլուխն ոտիւքն հանդերձ, և զփորոտին նորա։ Եւ ոչ թողուցուք ի նմանէ յայգ. և ոսկր մի՛ բեկանիցէք ի նմանէ. և որ ինչ մնասցէ ի նմանէ յայգ՝ հրով այրեսջիք։ Եւ այսպէս ուտիցէք. գօտիք ձեր ընդ մէջս, և կօշիկք ձեր յոտս, և ցուպք ձեր ի ձեռին. փութանակի ուտիցէք, զի զատիկ Տեառն է։ Եւ անցից ընդ ամենայն երկիրդ Եգիպտացւոց ի գիշերիս յայսմիկ, և հարից զամենայն անդրանիկ երկրիդ Եգիպտացւոց ի մարդոյ մինչև յանասուն. և յամենայն դիւսն Եգիպտացւոց արարից վրէժխնդրութիւն, զի ես եմ Տէր։ Եւ եղիցի ձեզ արիւնդ նշանակեալ ի վերայ տանց՝ յորս ուտիցէք դուք անդ։ Եւ տեսից զարիւնդ և ապրեցուցից զձեզ. և ոչ լինիցին ի ձեզ հարուածք ի սատակել՝ յորժամ հարկանիցեմ յերկրիդ Եգիպտացւոց։ Եւ եղիցի ձեզ արիւնդ այդ ի յիշատակ, և տօնեցէք զդա՝

Digitized by Google

*տօն Տեառն յազգս ձեր. օրէն յաւիտենական տօնեցէք զդա: Զեօթն օր բաղարջ ուտիցէք, յառաջնմէ իսկ օրէ անտի՝ անհետ արասջիք զխմոր ի տանց ձերոց. ամենայն որ ուտիցէ խմորեալ՝ սատակեսցի անձնն այն յԻսրայելէ: Յառաջնմէ օրէ անտի մինչև օրն եօթներորդ նուիրեալ եղիցի ձեզ սուրբ. զամենայն գործ սպասու մի՛ գործիցէք ի նմա, բայց միայն որ գործիցի ամենայն անձին՝ այն միայն գործեսցի ձեզ: Եւ պահեսջիք զպատուիրանս իմ զայս, զի յաւուր յայսմիկ հանից զզօրութիւն ձեր յերկրէս Եգիպտացւոց. և առնիցէք զօրս զայս յազգս ձեր օրէն յաւիտենական: Ի սկսանել չորեքտասաներորդի աւուր ամսոյն առաջնոյ՝ յերեկորեայ բաղարջ ուտիցէք մինչև ցքսան և մի օր ամսոյն ցերեկոյ. զեօթն օր մի՛ գտցի խմոր ի տունս ձեր. ամենայն որ ուտիցէ խմորեալ՝ սատակեսցի անձն այն ի ժողովրդենէ Իսրայելի. յեկաց և ի բնակաց երկրին խմորեալ մի՛ ուտիցեն. յամենայն բնակութեան ձերում ուտիցէք բաղարջ: Եւ կոչեաց Մովսէս զամենայն ծերակոյտ որդւոցն Իսրայելի, և ասէ ցնոսա. երթայք առէք ձեզ ոչխար ըստ ազգս ձեր, և զենջիք ի զատիկ: Եւ առնուցուք մշտիկ զոպայի թաթաւեալ յարեան որ առ դրօքն իցէ, և սրսկեսջիք զբարաւորաւն և զերկոքումբք սեմովքն յարենէ անտի որ առ դրօքն. բայց դուք մի՛ ելանիցէք իւրաքանչիւր ըստ դուռն տան իւրոյ մինչև ցառաւօտ: Եւ անցցէ Տէր հարկանել զԵգիպտացիսն. և տեսանիցէ զարիւնն որ ի վերայ բարաւորին և ի վերայ երկուց սեմոց, և զանց առնիցէ Տէր զդրօքն. և ոչ տայցէ թոյլ սատակչին մտանել ի տունս ձեր և հարկանել: Եւ պահեսջիք զբանս զայս՝ օրէն քեզ և որդւոց քոց մինչև ցյաւիտեան: 24:*

*Աղօթք հանդերձ ծունր դնելով զՏէր աղաչեսցուք:*
*Քահ. Տէր ողորմեա: Երեքս կրկնեա:*

*Քոր. Եւ ևս խաղաղութեան: Քահ. Օրհնութիւն և փառք:*

Ընթերցուած ի Յովնանու մարգարէէ: Ա. 1:

*Եւ եղև բան Տեառն առ Յովնան Ամաթեայ՝ և ասէ. Արի և գնա ի Նինուէ քաղաք մեծ, և քարոզեսջիր անդ, զի ել աղաղակ չարութեան նորա առ իս: Եւ յարեաւ Յովնան փախչել ի Թարսիս յերեսաց Տեառն. էջ ի Յոպպէ և եգիտ նաւ որ երթայր ի Թարսիս, ետ զգինս՝ և*

Digitized by Google

եմուտ ի նա նաւել ընդ նոսա ի Թարսիս յերեսաց Տեառն։ Եւ Տէր յարոյց հողմ ի ծովուն՝ և եղև մրրիկ մեծ ի ծովուն, և նաւն ի վտանգի կայր ի խորտակել։ Եւ երկեան նաւավարքն երկիւղ մեծ, և աղաղակէին առ իւրաքանչիւր աստուածս իւր. և ընկեցին զկարասին որ էր ի նաւին ի ծով անդր՝ զի թեթևացուսցեն յինքեանց։ Եւ Յովնան իջեալ ի խորշ մի նաւին՝ ննջէր և խորդայր. մատեաւ առ նա նաւապետն՝ և ասէ. զի՞նչ է այդ՝ զի խորդաս, արի կարդա զՏէր Աստուած քո. թերևս ապրեցուսցէ զմեզ Աստուած, և մի՛ կորիցուք։ Եւ ասեն իւրաքանչիւր ցընկեր իւր. եկայք արկցուք վիճակս՝ և տեսցուք, վասն ո՞յր են չարիքս այս ի վերայ մեր։ Արկին վիճակս, և ել վիճակն Յովնանու։ Եւ ասեն ցնա. պատմեա մեզ, վասն է՞ր են չարիքս այս մեզ. զի՞նչ արուեստ է քո, ուստի՞ գաս կամ յո՞ երթաս, յորմէ՞ աշխարհէ ես կամ յորմէ՞ ժողովրդենէ։ Ասէ ցնոսա. ծառայ Տեառն եմ ես, և զՏէր Աստուած երկնից պաշտեմ որ արար զծով և զցամաք։ Եւ երկեան արքն երկիւղ մեծ, և ասեն ցնա. զի՞նչ գործեցեր զայդ։ Զի գիտացին թէ յերեսաց Տեառն փախուցեալ էր, քանզի պատմեաց նոցա. և ասեն ցնա. զի՞նչ արասցուք քեզ՝ և դադարեսցէ ծովս ի մէնջ։ Զի ծովն առաւել ևս խռովեալ էր և յարուցանէր մրրիկ ի վերայ նոցա։ Եւ ասէ ցնոսա Յովնան. առէք ընկեցէք զիս ի ծով, և դադարեսցէ ի ձէնջ ծովդ. զի գիտեմ ես եթէ վասն իմ է մրրիկս այս մեծ ի վերայ ձեր։ Եւ ջանային արքն դարձուցանել ընդ նաւն ի ցամաք՝ և ոչ կարէին, զի ծովն ևս քան զևս խռովէր և սաստկանայր ի վերայ նոցա։ Աղաղակեցին առ Տէր և ասեն. քաւ լիցի Տէր, մի՛ կորիցուք վասն անձին առնս այսորիկ, և մի՛ ածեր ի վերայ մեր արիւն արդար, զի դու Տէր, որպէս կամեցար և արարեր։ Եւ առին զՅովնան և ընկեցին ի ծովն, և դադարեաց ծովն ի խռովութենէ իւրմէ. և երկեան արքն երկիւղ մեծ ի Տեառնէ, զենին զոհս Տեառն և ուխտեցին ուխտս։ Եւ հրամայեաց Տէր կիտին մեծի կլանել զՅովնան, և էր Յովնան ի փոր կիտին զերիս տիւս և զերիս գիշերս։ Եւ եկաց Յովնան յաղօթս առ Տէր Աստուած ի փորոյ կիտին, և ասէ. ի նեղութեան իմում աղաղակեցի առ Տէր Աստուած իմ, և լուաւ ինձ յորովայնէ դժոխոց աղաղակի

իմում. լուր Տէր ձայնի իմում. ընկեցեր զիս ի խորս սրտից ծովու, և գետք պաշարեցին զիս: Ամենայն զբօսանք քո և ալիք քո անցին ի վերայ իմ. և ասացի՝ թէ մերժեցայ յաչաց քոց. արդ իցէ՞ թէ յաւելից հայել ի տաճար սուրբ քո: Հեղան զինև ջուրք մինչև յոգիս, անդունդք անհնարինք պաշարեցին զիս: Եմուտ գլուխ իմ ընդ փապարս լերանց, իջի յերկիր՝ որոյ նիգք իւր աղխք յաւիտենից, ելցեն յապականութենէ կեանք իմ: Առ քեզ Տէր Աստուած իմ ի նուաղել հոգւոյ իմոյ կարդացի, զՏէր յիշեցի, և եկեսցեն աղօթք իմ ի տաճար սուրբ քո: Որ պահէին զունայնութիւն և զստութիւն՝ զողորմութիւնս իւրեանց թողին. այլ ես ի ձայն օրհնութեան և խոստովանութեան մատուցից քեզ պատարագ զոր ուխտեցի, և հատուցից փրկութեան Տեառն: Եւ հրամայեցաւ ի Տեառնէ վիշապ ձկանն՝ և եթուք զնա ի ցամաք: Եւ եղև բան Տեառն առ Յովնան երկրորդ անգամ և ասէ. արի գնա ի Նինուէ քաղաք մեծ, և քարոզեաջիր ի նմա ըստ առաջին քարոզութեանն զոր խօսեցայ առ քեզ: Յարեաւ Յովնան և գնաց ի Նինուէ, որպէս խօսեցաւ ընդ նմա Տէր. և Նինուէ էր քաղաք մեծ Աստուծոյ, իբրև գնաց երից աւուրց ճանապարհի: Եւ սկսաւ Յովնան մտանել ի քաղաքն իբրև աւուր միոյ ճանապարհի, քարոզեաց և ասէ. այլ ևս երեք աւուրք՝ և Նինուէ կործանեսցի: Եւ հաւատացին արք Նինուէացիք յԱստուած, և քարոզեցին պահս և քուրձ զգեցան ի մեծամեծաց մինչև ցփոքունս իւրեանց: Եհաս բանն առ թագաւորն Նինուէացւոց. յարեաւ յաթոռոյ իւրմէ և մերկացաւ ըզպատմուճան իւր, զգեցաւ քուրձ և նստաւ ի վերայ մոխրոյ: Եւ քարոզեցաւ և պատմեցաւ ի Նինուէ՝ ի թագաւորէն և ի մեծամեծաց իւրոց, թէ մարդ և անասուն՝ խաշն և արջառ՝ մի՛ ինչ ճաշակեսցեն և մի՛ ճարակեսցին և մի՛ ջուր արբցեն: Եւ զգեցան քուրձ մարդ և անասուն, և աղաղակեցին առ Աստուած սաստի մտօք, և դարձան յիւրաքանչիւր ճանապարհաց իւրեանց չարաց՝ և յանօրէնութենէ որ ի ձեռս իւրեանց, և ասեն. ո՞ գիտէ ապաշաւեսցէ Աստուած և դարձցի ի բարկութենէ սրտմտութեան իւրոյ, և մի՛ կորիցուք: Եւ ետես Աստուած զգործս նոցա՝ զի դարձան իւրաքանչիւր ի ճանապարհաց իւրեանց չարաց, և զղջացաւ Աստուած ի վերայ չարեացն՝

զոր խօսեցաւ առնել նոցա, և ոչ արար։ Եւ տրտմեցաւ Յովնան տրտմութիւն մեծ և խռովեցաւ, և եկաց յաղօթըս առ Տէր Աստուած, և ասէ. ո՜վ Տէր, ո՞չ այս այն բանք են իմ մինչ էի անդէն յերկրին իմում. վասն այնորիկ աճապարեցի փախչել ի Թարշիշ, զի գիտէի թէ ողորմած ես դու և գթած, երկայնամիտ և բազումողորմ, և զղջանաս ի վերայ չարեաց. և արդ Տէր Տէր, ա՛ռ զոգի իմ յինէն, զի լաւ է ինձ մեռանել՝ քան թէ իցեմ կենդանի։ Եւ ասէ Տէր ցՅովնան, թէ արդարև յո՞յժ տրտմեալ իցես։ Եւ ել Յովնան ի քաղաքէ անտի, և նստաւ յանդիման քաղաքին, և արար իւր հովանի, և նստաւ ընդ հովանեաւն. մինչև տեսանիցէ թէ զի՞նչ լինիցի քաղաքին։ Եւ հրաման ետ Աստուած դդմենւոյն, և ել ի վերայ գլխոյն Յովնանու՝ լինել նմա հովանի ի վերայ գլխոյ նորա, զովացուցանել զնա ի տառապանաց իւրոց. և ուրախ եղև Յովնան ի վերայ դդմենւոյն ուրախութիւն մեծ։ Եւ հրաման ետ Աստուած որդանն՝ առաւօտուն ի վաղիւ անդր, եհար զդդմենին՝ և ցամաքեցաւ. և եղև ի ծագել արևուն հրամայեաց Աստուած հողմոյ խորշակի տապախառնի, և անկաւ արևն զգլխովն Յովնանու. և կայր ի տարակուսի և քաղէին ոգիք նորա. և ասէր, լաւ էր ինձ մեռանել քան զայս կեանս իմ։ Եւ ասէ Տէր Աստուած ցՅովնան. թէ արդարև յո՞յժ տրտմեալ իցես ի վերայ դդմենւոյն։ Եւ ասէ. յոյժ տրտմեալ եմ մինչև ցմահ։ Եւ ասէ Տէր. դու խնայեցեր ի դդմենին՝ յոր ոչ եղեր ինչ աշխատ, և ոչ սնուցեր զնա. որ գիշերի ել, և միւս գիշերի կորեաւ։ Իսկ ե՞ս ոչ խնայեցից ի Նինուէ քաղաք մեծ, յորում բնակեալ են աւելի քան զերկոտասան բիւր մարդիկ՝ որ ոչ ծանեան զաջ և զահեակ իւրեանց, և անասուն բազում։ Դ. 11։

**Աղօթք** հանդերձ ծունր դնելով զՏէր աղաչեսցուք ։
Քահ. Տէր ողորմեա ։ Երիցս կրկնել ։

Քոր. Եւ ես խաղաղութեան։ Քահ. Օրհնութիւն և փառք։

ԸՆԹերցուած յԵլից: ԺԴ. 24:

Եւ եղև յառաւօտին պահու՝ հայեցաւ Տէր ի բանակն Եգիպտացւոց սեամբ հրոյն և ամպոյ, և խռովեաց զբանակն Եգիպտացւոցն. և կապեաց զանիւս կառաց նոցա, և վարէր զնոսա բռնութեամբ։ Ասեն Եգիպտացիքն. փա-

Digitized by Google

խիցուք յերեսաց Իսրայելի, զի Տէր պատերազմի վասն նոցա ընդ Եգիպտացիս։ Եւ ասէ Տէր ցՄովսէս. ձգեա զձեռն քո ի վերայ ծովուդ, և կարկատեսցի անդրէն ջուրըդ, և ծածկեսցէ զԵգիպտացիսդ, զկառս ղոցա և զհեծեալս իւրեանց։ Եւ ձգեաց Մովսէս զձեռն իւր ի վերայ ծովուն, և դարձաւ ջուրն ընդ առաւօտն ի տեղի իւր. և Եգիպտացիքն փախեան յերեսաց ջրոյն, և թօթափեաց Տէր զԵգիպտացիսն ի մէջ ծովուն. և դարձուցեալ զջուրըն՝ ծածկեաց զկառս և զհեծեալս և զամենայն զօրութիւն փարաւոնի, որ մտեալ էին զհետ նոցա ի ծով անդըր. և ոչ մնաց ի նոցանէ և ոչ մի։ Եւ որդիքն Իսրայելի գնացին ընդ ցամաք ի մէջ ծովուն, և ջուրն պարիսպ էր ընդ աջմէ նոցա և ընդ ահեկէ իւրեանց։ Եւ ապրեցոյց Տէր զԻսրայէլ յաւուր յայնմիկ ի ձեռաց Եգիպտացւոցն։ Եւ ետես Իսրայէլ զԵգիպտացիսն մեռեալս առ ափն ծովուն. և ետես Իսրայէլ զձեռն մեծ զոր արար Տէր ընդ Եգիպտացիսն. և երկեաւ ժողովուրդն ի Տեառնէ, և հաւատացին յԱստուած և ի Մովսէս ծառայ նորա։ Յայնժամ երգեաց Մովսէս և որդիքն Իսրայելի զօրհնութիւնս զայս Աստուծոյ, և ասեն. Օրհնեսցուք զՏէր՝ զի փառօք է փառաւորեալ. զերիվարս և զհեծեալըս նոցա ընկէց ի ծով։ Օգնական ընդունելի իմ Տէր, և եղև ինձ ի փրկութիւն։ Սա է իմ Աստուած և փառաւոր արարից զսա. Աստուած հօր իմոյ, և բարձր արարից զսա։ Տէր խորտակէ զպատերազմունս, Տէր անուն նորա։ Զկառս փարաւոնի և զզօրութիւնս նորա ընկէց ի ծով, զընտիրս հեծելոց և զպառաշէնս. ընկղմեցան ի ծով կարմիր։ Խորք ծածկեցին զնոսա, ընկլան յանդունդս իբրև զվէմ։ Աջ քո Տէր փառաւորեալ է զօրութեամբ, աջ քո Տէր խորտակեաց զթշնամին։ Եւ բազմութեամբ փառաց քոց մանրեցեր զհակառակորդս. առաքեցեր զբարկութիւն քո և եկեր զնոսա իբրև զեղէգըն։ Եւ հողմով սրտմտութեամբ քով պատառեցան ջուրք. պաղեցան իբրև զպարիսպ ջուրք. պաղեցան ալիք ի մէջ ծովուն։ Ասաց թշնամին. հալածեցից և հասից, բաժանեցից զաւարն և լցուցից ի նոցանէ զանձն իմ. սատակեցից սրով իմով, տիրեսցէ նոցա ձեռն իմ։ Առաքեցեր զհողմն քո. և ծածկեաց զնոսա ծով. ընկղմեցան իբրև զկապար ի ջուրս սաստիկս։ Ո՞վ իցէ նման քեզ յաստուա-

Digitized by Google

ծըս Տէր, և կամ ո՞վ նմանիցէ քեզ՝ փառաւորեալդ ի սուրբս, սքանչելի փառօք՝ որ առնես զնշանս. ձգեցեր զաջ քո՝ և եկուլ զնոսա երկիր: Առաջնորդեցեր արդարութեամբ ժողովրդեան քում այդմ զոր փրկեցեր. մխիթարեցեր զօրութեամբ քով ի բանակետղ սրբութեան քոյ: Լուան ազգք և բարկացան. և երկունք կալան զբնակիչս Քանանացւոց: Ցայնժամ տագնապեցան դատաւորք Եդովմայ և իշխանք Մովաբացւոց: Կալաւ զնոսա դողումըն, հալեցան ամենայն բնակիչք Քանանացւոց: Անկցի ի վերայ նոցա ահ և երկիւղ, մեծութեամբ բազկի քո քարացցին: Մինչև անցցէ ժողովուրդ քո Տէր, մինչև անցցէ ժողովուրդ քո այս զոր ստացար: Տարեալ տընկեսցես զնոսա ի լեառն ժառանգութեան քո, ի պատրաստութիւն բնակութեան քո, զոր արարեր Տէր սրբութիւն, Տէր՝ զոր պատրաստեցին ձեռք քո. Տէր թագաւոր յաւիտեան և յաւիտեանս և ևս: Զի մտին երիվարք փարաւոնի կառօք և հեծելովք նորա ի ծով, և ած ի վերայ նոցա Տէր զջուրս ծովուն, և որդիքն Իսրայելի գնացին ընդ ցամաք ի մէջ ծովուն: Եւ առ Մարիամ մարգարէ քոյրն Ահարոնի զթմբուկն ի ձեռն իւր, և ելին ամենայն կանայք զհետ նորա թմբկօք և պարուք. և յառաջէր Մարիամ և ասէր. Օրհնեսցուք զՏէր, զի փառօք է փառաւորեալ. զերիվարս և զհեծեալս ընկէց ի ծով: ԺԵ. 21:

Յորժամ զՕրհնեսցուքն կատարեն, և զԼուսաւորեայն զԵսայեայ հանդերձեալ են կատարել, յայնժամ լուցանեն ջահս և կանթեղս, և տան մոմեղէն ի ձեռս ամենեցուն: Եւ երգեն:

ՇԱՐԱԿԱՆ ԴՁ

Լուսաւորեա Երուսաղէմ զի հասեալ է լոյս քո. զարդարեա զամուրըս քո. եւ փառք Տեառն ի վերայ քո ծագեցին: Օրհներգութեամբ սաղմոսիւք քեզ վայելէ Աստուած օրհնութիւն ի Սիոնէ. եւ քեզ մատուցին աղօթքք յԵրուսաղէմ: Գովեա Երուսաղէմ ըզՏէր. եւ օրհնեա զԱստուած քո. ը նոր ժողովուրդ դշխոյ դուստըր Սիոնի:

Աղօթք հանդերձ ծունր դնելով զՏէր աղաչեսցուք:
Քահ. Տէր ողորմեա: Երիցս կրկնեա:
Քրզ. Եւ ևս խաղաղութեան: Քահ. Օրհնութիւն և փառք:

Digitized by Google

*ԸՆԹերցուած յԵսայեայ մարգարէէ: Կ. 1:*

*Լուսաւորեաց լուսաւորեաց, Երուսաղէմ, զի հասեալ է լոյս քո, և փառք Տեառն ի վերայ քո ծագեցեն: Զի ահա խաւար ծածկեաց զերկիր, և մառախուղ զհեթանոսս. բայց ի քեզ Տէր յայտնեսցի, և փառք Նորա ի քեզ երևեսցին, և գնասցեն թագաւորք ի լոյս քո, և հեթանոսք ի ծագել լուսոյ քո: Համբարձ շուրջ զաչս քո, և տես ժողովեալ առ քեզ զամենայն մանկունս քո. զի եկին հասին ի հեռաստանէ որդիք քո, և դստերք քո ի վերայ ուսոց նոցա բարձեալ բերիցին: Յայնժամ տեսցես և խնդասցես, երկիցես և զարհուրեսցիս ի սրտի քում. զի փոխեսցի ի քեզ մեծութիւն ծովու և ազգաց և ժողովրդոց: Եկեսցեն ի քեզ երամակք ուղտուց, և ծածկեսցեն զքեզ ուղտերամակքն Մադիամու և Գեփայ. ամենեքեան ի Սաբայ եկեսցեն, բերել ոսկի և կնդրուկ և ականս պատուականս, և զփրկութեան Տեառն տացեն զաւետիս: Եւ ամենայն խաշինքն Կեդարու ժողովեսցին առ քեզ, և խոյքն Նաբէովթայ ածցին և մատուսցին ընդունելի պատարագք ի վերայ սեղանոյ իմոյ, և տուն աղօթից իմոց փառաւորեսցի: Ո՞վ են սոքա որ իբրև զամպըս թռուցեալ են, և իբրև զաղաւնիս ձագախառն երամովքն գան առ իս: Ինձ ակն ունին կղզիք և նաւք Թարսսի յառաջագոյն ածել զորդիս քո ի հեռաստանէ. զարծաթն և զոսկի ընդ իւրեանս՝ վասն անուան Տեառն սրբոյն, և վասն սրբոյն Իսրայելի փառաւորելոյ: Եւ շինեսցեն որդիք այլազգեաց զպարիսպս քո, և թագաւորք նոցա ընծայեսցին քեզ. զի վասն բարկութեան իմոյ հարի զքեզ, և վասն ողորմութեան իմոյ սիրեցի զքեզ: Եւ բացցին դրունք քո հանապազորդ ի տուէ և ի գիշերի, և մի՛ փակեսցին, կրել ի քեզ զզօրութիւն ազգաց. և ըզթագաւորս իւրեանց ածիցեն առ քեզ: Զի ազգք և թագաւորք որ քեզ ոչ ծառայիցեն՝ կորիցեն, և ազգքն աւերելով աւերեսցին: Եւ փառքն Լիբանանու առ քեզ եկեսցեն, սարդիւն և սօսիւ և նոճով և մայրիւ՝ առ հասարակ փառաւոր առնել զտեղի սրբութեան իմոյ, և ըզտեղի ոտից իմոց փառաւորեցից: 13:*

*Աղօթք հանդերձ ծունր դնելով զՏէր աղաչեսցուք:*

Քահ. Տէր ողորմեա: Երիցս կրկնեա:

Digitized by Google

Ժող. Եւ ևս խաղաղութեան։ Քահ. Օրհնութիւն և փառք։

ԸՆթերցուած ի Յովբայ: ԼԸ. 1:

Ո՞վ է դա՝ որ թաքուցանէ յինէն զխորհուրդս, ժողովեալ զբանս ի սրտի, և համարի յինէն թաքուցանել։ Պնդեա իբրև այր զմէջ քո, հարցից զքեզ՝ և տուր ինձ պատասխանի։ Ո՞ւր էիր մինչ ես հիմունս արկանէի երկրի. պատմեա ինձ եթէ խելամուտ իցես հանճարոյ։ Ո՞վ եդ զչափ դորա թէ գիտիցես. կամ ո՞վ արկ ի վերայ դորա լար։ Յէ՞ր վերայ հաստատեցան աղխք դորա, ո՞վ է որ արկ զվէմն անկեան ի դմա։ Յորժամ եղեն աստեղք ծերք, ամենայն հրեշտակք աստեղաց օրհնեցին զիս մեծաձայն, և ամենայն հրեշտակք իմ գովեցին։ Փակեցի զծով դրամբք, յորժամ ծնաւ յորովայնէ մօր իւրոյ ելանել։ Եդի նմա զմէգ ի հանդերձ, և զմառախուղ նմա ի խանձարուրս։ Եդի նմա սահմանս՝ եդեալ փականս և դրունս. ասացի, ցայդ վայր եկեսցես՝ և այլ մի՛ անցանիցես, այլ այդրէն ի քեզ խորտակեսցին ալիք քո։ Եթէ առ քե՞ կարգեցի զլոյսն առաւօտին։ Արուսեակն ետես զկարգ իւր հասանել ի վերայ թևոց երկրի, թօթափել զամպարիշտս ի նմանէ։ Կամ թէ քո՞ առեալ զհողն կաւ՝ ստեղծեր կենդանի, և խօսուն եդիր զնա յերկրի։ Եւ մերժեցե՞ր զլոյսն յամպարշտաց, զբազուկս ամբարտաւանից խորտակեցե՞ր։ Հասեա՞լ իցես յակն ծովու, և ընդ հետս անդնդոց շրջեցա՞ր։ Բանայցե՞ն քեզ ահիւ դրունք մահու, բարապանաց դժոխոց ի տեսանել զքեզ սարսիցե՞ն։ Խելամո՞ւտ իցես լայնութեան առ ի ներքոյ երկնից, ազէ պատմեա ինձ՝ ո՞րչափ իցէ։ Զի՞նչ երկիր իցէ յորում լոյսն ագանիցի, կամ զի՞նչ տեղի խաւարի։ Տանիցի՞ս զիս ի սահմանս նոցա, եթէ խելամո՞ւտ իցես շաւղաց նոցա։ Թերևս գիտիցե՞ս և ընդ այն ժամանակս իսկ ծնեալ իցես, և թիւ ամաց քոց բազում իցէ։ Երթեա՞լ իցես ի շտեմարանս ձեան, և զգանձս կարկտի տեսեա՞լ իցես։ Համբարեա՞լ կայցէ քեզ ի ժամանակս թշնամեաց, յօր մարտի և պատերազմի։ Ուստի՞ ելանիցէ եղեամն, կամ սփռիցի հարաւ ի ներքոյ երկնից։ Ո՞ պատրաստեաց զհոսանս սաստիկս անձրևաց, և զճանապարհս ամպրոպաց տեղեալ յերկիր, ուր ոչ գոյ մարդ յանապատ յանմարդի, յագեցուցանել զանկոխն և զանշէնն, և բղխեցուցանել զբոյս դալարւոյ։ Ո՞ է հայր անձրևի, և ո՞վ է որ ծնաւ զշաղս ցօղոյ։ 28։

Աղօթք հանդերձ ծունր դնելով զՏէր աղաչեսցուք։
Քահ. Տէր ողորմեա։ Երիցս կրկնեա։

Քար. Եւ ևս խաղաղութեան։ Քահ. Օրհնութիւն և փառք։

Ընթերցուած ի Յեսուայ որդւոյ Նաւեայ: Ա. 1:

Եւ եղև յետ վախճանելոյն Մովսիսի ծառայի Տեառն, խօսեցաւ Տէր ընդ Յեսուայ որդւոյ Նաւեայ պաշտօնէի Մովսիսի և ասէ. Մովսէս ծառայ իմ վախճանեցաւ. արդ յարուցեալ անցցես ընդ այդ Յորդանան դու և ամենայն ժողովուրդ քո՝ յերկիրն զոր ես տաց որդւոցն Իսրայէլի։ Զամենայն տեղիս յոր համանիցեն գնացք ոտից ձերոց՝ ձեզ տաց զնա, որպէս խօսեցայ ընդ Մովսիսի. զանապատն և զԼիբանաններն, մինչև ցգետն մեծ ցգետն Եփրատ, զամենայն երկիրն Գետացւոց. մինչև ցծովն վերջին ի մտից արևու՝ ձեզ լիցին սահմանքն. և ոչ ոք կացցէ ընդդէմ ձեր զամենայն աւուրս կենաց քոց։ Եւ որպէս էի ընդ Մովսիսի, նոյնպէս եղէց և ընդ քեզ. և ոչ թողից զքեզ և ոչ անտես արարից զքեզ։ Զօրացիր և քաջ լեր. զի դու բաժանեսցես ժողովրդեանդ այդմիկ զերկիրն՝ զոր երդուայ հարցն քոց տալ դոցա։ Արդ զօրացիր և քաջ լեր յոյժ, պահել և առնել ըստ ամենայն օրինացն որպէս պատուիրեաց քեզ Մովսէս ծառայ իմ. և մի՛ խոտորիցիս ի նոցանէ յաջ կամ յահեակ, զի խելամուտ լիցիս ամենայնի զինչ և գործեսցես։ Եւ մի՛ մերժիցես զգիր օրինացս այսոցիկ ի բերանոյ քումմէ, և խոկասցես ի դա ի տուէ և ի գիշերի, զի իմասցիս առնել զամենայն գրեալսդ ի դմա. և ապա աջողեսցիս և ուղղեսցես զճանապարհս քո, և ապա խելամուտ լինիցիս։ Ահա պատուիրեմ քեզ՝ զօրացիր և քաջ լեր. մի զանգիտիցես և մի՛ երկնչիցիս, զի ընդ քեզ է Տէր Աստուած քո յամենայն տեղիս ուր և երթայցես. 9։

Աղօթք հանդերձ ծունր դնելով զՏէր աղաչեսցուք։
Քահ. Տէր ողորմեա։ Երիցս կրկնեա։

Քար. Եւ ևս խաղաղութեան։ Քահ. Օրհնութիւն և փառք։

Ընթերցուած ի չորրորդ թագաւորութեանց: Բ. 1:

Եւ եղև ի վերացուցանել Տեառն զԵղիա շարժմամբ յերկինս, և գնացին Եղիա և Եղիսեէ ի Գաղգաղա, և ասէ Եղիա ցԵղիսեէ. Նիստ դու աստ, զի Տէր առաքեաց

զիս ի Բեթէլ ։ Եւ ասէ Եղիսեէ . կենդանի է Տէր և կենդանի է անձն քո՝ եթէ թողից զքեզ ։ Եւ եկին ի Բեթէլ . և ելին որդիք մարգարէիցն որ ի Բեթէլ՝ առ Եղիսեէ , և ասեն ցնա . թէ գիտիցե՞ս զի այսօր առնու Տէր զտէրդ ի գլխոյ քումմէ ։ Եւ ասէ . գիտեմ և ես , լուռ լերուք ։ Եւ ասէ Եղիա ցԵղիսեէ . Նիստ դու աստ , զի Տէր առաքեաց զիս յԵրիքով ։ Եւ ասէ . կենդանի է Տէր և կենդանի է անձն քո՝ եթէ թողից զքեզ ։ Եւ եկին յԵրիքով ։ Եւ մատեան որդիք մարգարէիցն որ յԵրիքով՝ առ Եղիսեէ , և ասեն ցնա . եթէ գիտիցե՞ս զի այսօր առնու Տէր զտէրդ ի գլխոյ քումմէ ։ Եւ ասէ . գիտեմ և ես , լուռ լերուք ։ Եւ ասէ ցնա Եղիա . Նիստ դու աստ , զի Տէր առաքեաց զիս ի Յորդանան ։ Եւ ասէ Եղիսեէ . կենդանի է Տէր և կենդանի է անձն քո՝ եթէ թողից զքեզ ։ Եւ գնացին երկոքեան . և յիսուն այր յորդւոց մարգարէիցն , և կացին ի հանդիպոյ ի բացեայ . և երկոքեան կացին յեզերն Յորդանանու ։ Եւ առ Եղիա ըզմաշկեակն իւր , ծալեաց և եհար զջուրն , և բաժանեցաւ ջուրն յայսկոյս և յայնկոյս , և անցին երկոքեան ընդ ցամաք ։ Եւ եղև ընդ անցանելն նոցա , ասէ Եղիա ցԵղիսեէ . խնդրեա զինչ արարից քեզ մինչչև վերացեալ իցեմ ի քէն ։ Եւ ասէ Եղիսեէ . եղիցի կրկին ոգիդ քո ի վերայ իմ ։ Եւ ասէ Եղիա . դժուարինս խնդրեցեր . բայց եթէ տեսցես զիս յամբառնալն իմում ի քէն՝ եղիցի այնպէս , ապա թէ ոչ՝ մի՛ եղիցի ։ Եւ եղև մինչդեռ գնային նոքա , և խօսէին երթային , և ահա կառք հրեղէնք և երիվարք հրեղէնք , և անջրպետեցին ի մէջ երկոցունց . և վերացաւ Եղիա շարժմամբ յերկինս ։ Եւ Եղիսեէ հայէր և աղաղակէր . հայր , հայր , կառքդ Իսրայելի և հեծեալքդ նորա ։ Եւ այլ ոչ ևս ետես զնա . և բուռն եհար զհանդերձից իւրոց , և պատառեաց յերկուս ծուէնս . և առ Եղիսեէ զմաշկեակն Եղիայի զոր ընկեց ի վերայ նորա ։ Եւ դարձաւ Եղիսեէ , և եկաց առ եզերն Յորդանանու . և առ զմաշկեակն Եղիայի զոր ընկեց ի վերայ նորա , և եհար զջուրսն և ասէ . ո՞ւր ես Տէր Աստուած Եղիայի ափփով ։ Եւ եհար զջուրսն , և բաժանեցան յայսկոյս և յայնկոյս , և անց Եղիսեէ ։ Իբրև տեսին որդիք մարգարէիցն որ յԵրիքով ի հանդիպոյն , և ասեն . Հանգեաւ ոգին Եղիայի ի վերայ Եղիսեէի . և ե-

Digitized by Google

կին ընդ առաջ նորա, և երկիր պագին նմա ի վերայ երկրի։ Եւ ասեն ցնա. ահաւասիկ են ընդ ծառայս քո որդիք զօրութեան արք յիսուն. երթիցեն և խնդրեսցեն զտէրն քո, գուցէ ա՛ռ զնա Հոգի Տեառն, և ընկէց զնա առ Յորդանանու, կամ ի վերայ միոյ ուրուք լերանց, և կամ ի վերայ միոյ ուրուք բլրոց։ Եւ ասէ Եղիսէէ. մի՛ առաքէք։ Եւ բռնադատեցին զնա մինչև ամաչէր. և ասէ. առաքեցէք։ Եւ առաքեցին յիսուն այր, և խընդրեցին զերիս աւուրս, և ոչ գտին զնա։ Եւ դարձան առ նա, և նա նստէր յԵրիքով. և ասէ ցնոսա Եղիսէէ. ոչ ասացի ձեզ թէ մի՛ երթայք։ Եւ ասեն արք քաղաքին ցԵղիսէէ. ահաւասիկ բնակութիւն քաղաքիս բարի է, որպէս և տէրդ իսկ տեսանէ, և ջուրքս չար և երկիրս անզաւակ։ Եւ ասէ Եղիսէէ. առէք առ իս կուժ մի նոր, և դիք այդր։ Եւ բերին առ նա. և ել Եղիսէէ յակունս ջուրցն, և արկ անդ աղ և ասէ. այսպէս ասէ Տէր. բըժշկեմ զջուրսդ զայդոսիկ, և մի՛ ևս լիցի այտի մահ և անզաւակութիւն։ Եւ բժշկեցան ջուրքն մինչև ցայսօր ըստ բանին Եղիսէի զոր խօսեցաւ։ 22։

Աղօթք հանդերձ ծունր դնելով զՏէր աղաչեսցուք։
Քահ. Տէր ողորմեա։ Երիցս կրկնել։

Քար. Եւ ևս խաղաղութեան։ Քահ. Օրհնութիւն և փառք։

Ընթերցուած յԵրեմիայ մարգարէէ: ԼԱ. 31:

Ահաւասիկ աւուրք գան, ասէ Տէր, և ուխտեցից տանըդ Իսրայելի և տանդ Յուդայ ուխտ նոր։ Ոչ ըստ ուխտին զոր ուխտեցի ընդ հարս նոցա՝ յաւուր յորում առի զձեռանէ նոցա հանել զնոսա յերկրէն Եգիպտացւոց. զի նոքա ոչ կացին յուխտին իմում, և ես անփոյթ արարի զնոցանէ, ասէ Տէր։ Այլ այս է ուխտն զոր ուխտեցից տանդ Իսրայելի. յետ աւուրցն այնոցիկ, ասէ Տէր, տաց զօրէնս իմ ի միտս նոցա, և ի սիրտս նոցա գրեցից զընոսա. և եղէց նոցա յԱստուած, և նոքա եղիցին ինձ ի ժողովուրդ։ Եւ մի՛ ևս ուսուցանիցեն իւրաքանչիւր զընկեր իւր, և իւրաքանչիւր զեղբայր իւր ասել՝ թէ ծանիր զՏէր. զի ամենեքին ծանիցեն զիս ի փոքրկանց նոցա մինչև ի մեծամեծս, ասէ Տէր. զի քաւիչ եղէց անիրաւութեանց նոցա և զմեղս նոցա ոչ ևս յիշեցից։ 34։

Աղօթք հանդերձ ծունր դնելով զՏէր աղաչեսցուք։
Քահ. Տէր ողորմեա։ Երիցս կրկնել։

Digitized by Google

Քոչ. Եւ ևս խաղաղութեան։ Քահ. Օրհնութիւն և փառք։

Ընթերցուած յեզեկիելէ մարգարէէ։ Լէ. 1։

Եւ եղև ի վերայ իմ ձեռն Տեառն, և եհան զիս հոգւովն Տեառն, և եդ զիս ի մէջ դաշտին, և այն լի էր ոսկերօք մարդկան. և շրջեցոյց զիս շուրջ զոսկերօքն, և ահա բազում յոյժ էին ի վերայ երեսաց դաշտին, և ցամաքեալք յոյժ։ Եւ ասէ ցիս. որդի մարդոյ, իցէ՞ թէ կենդանի լինիցին ոսկերքդ այդոքիկ։ Եւ ասեմ. Տէր Տէր, դու գիտես զայդ։ Եւ ասէ ցիս. որդի մարդոյ, մարգարեաց ի վերայ ոսկերացդ այդոցիկ և ասասցես ցդոսա. ոսկերք ցամաքեալք՝ լուարուք զպատգամս Տեառն. այսպէս ասէ Տէր Տէր ցոսկերսդ ցայդոսիկ. ահաւասիկ ես ածեմ ի վերայ ձեր շունչ կենդանի. և տաց ի ձեզ ջիլս, և ածից ի վերայ ձեր մարմինս, և ձգեցից ի վերայ ձեր մորթ. և տաց զոգի իմ ի ձեզ, և լինիջիք կենդանի, և ծանիջիք թէ ես եմ Տէր։ Եւ մարգարէացայ որպէս և հրաման ետ ինձ Տէր։ Եւ եղև բարբառ ի մարգարէանալն իմում, և ահա շարժումն. և մերձեցաւ ոսկր առ ոսկր առ իւրաքանչիւր յօդս. և տեսի և ահա ջիլք և մարմինք պատէին, և ձգէր ի վերայ նոցա մորթ, և շունչ ոչ գոյր ի նոսա։ Եւ ասէ ցիս. մարգարեաց, որդի մարդոյ, մարգարեաց ի վերայ շնչոյն, և ասասցես ցշունչն. այսպէս ասէ Տէր Տէր. եկ շունչ ի չորից հողմոց, և փչեա ի մեռեալս յայսոսիկ և կեցցեն։ Եւ մարգարէացայ որպէս և հրաման ետ ինձ Տէր. և եմուտ ի նոսա շունչն, և եղեն կենդանի. և կանգնեցան կացին ի վերայ ոտից իւրեանց, ժողովուրդ բազում յոյժ յոյժ։ Եւ խօսեցաւ ընդ իս Տէր և ասէ. որդի մարդոյ, ոսկերքդ այդոքիկ՝ ամենայն տունդ Իսրայելի է. և դոքա ասեն, չորացան ոսկերք մեր, հատաւ յոյս մեր և մեռաք։ Վասն այդորիկ մարգարեաց և ասասցես ցդոսա. այսպէս ասէ Տէր Տէր. ահաւադիկ ես բացից զգերեզմանս ձեր, և հանից զձեզ ի գերեզմանաց ձերոց ժողովուրդ իմ, և տարայց զձեզ յերկիրն Իսրայելի։ Եւ ծանիջիք եթէ ես եմ Տէր, ի բանալ ինձ զգերեզմանս ձեր և հանել զձեզ ի գերեզմանաց ձերոց, ժողովուրդ իմ. և տաց զոգի իմ ի ձեզ, և լինիջիք կենդանի. և եդից զձեզ յերկրին ձերում, և ծանիջիք թէ ես եմ Տէր. և խօսեցայ և արարից, ասէ Տէր Տէր։ 14։

Digitized by Google

Աղօթք հանդերձ ծունր դնելով զՏէր աղաչեսցուք։ Քահ. Տէր ողորմեա։ Երիցս կրկնեա։

Քար. Եւ ևս խաղաղութեան։ Քահ. Օրհնութիւն և փառք։

Յառաջ ընթերցուածոցն կարդան շղթանկէլն է բերան։ Եւ ժամարարն աղաս ասէն։

*Ընթերցուած ի Դանիէլէ մարգարէէ: Գ. 1:*

Յամին ութուտասներորդի Նաբուգոդոնոսորայ արքայի արար պատկեր ոսկի. բարձրութիւն նորա վաթսուն կանգուն, և լայնութիւն նորա կանգուն վեց. և կանգնեաց զնա ի դաշտին Դէերայ յաշխարհին Բաբելացւոց։ Եւ արձակեաց ժողովել զզօրավարս և զզօրագլուխս և զկուսակալս, զպետս և զբռնաւորս և զգործակալս և զամենայն իշխանս աշխարհաց՝ գալ ի նաւակատիս պատկերին զոր կանգնեաց արքայն Նաբուգոդոնոսոր։ Եւ ժողովեցան կուսակալք, զօրավարք և զօրագլուխք՝ պետք և բռնաւորք, մեծամեծք, գործակալք և ամենայն իշխանք աշխարհաց, գալ ի նաւակատիս պատկերին զոր կանգնեաց արքայն Նաբուգոդոնոսոր. և կային առաջի պատկերին զոր կանգնեաց արքայն Նաբուգոդոնոսոր։ Եւ քարոզ կարդայր զօրութեամբ և ասէր. ձեզ ասի, ազգք և ազինք և լեզուք. յորժամ լսիցէք զձայն փողոյ՝ սրընգի, թմբկի և քնարի և տաւղի և զերգոց միաբանութեան, և զամենայն ազգաց արուեստականաց, անկանիջիք և երկիր պագանիջիք պատկերին զոր կանգնեաց Նաբուգոդոնոսոր արքայ։ Եւ որ ոչ անկեալ երկիր պագանիցէ՝ ի նմին ժամու ընկեսցի ի հնոցն հրոյն բորբոքելոյ։ Եւ եղև իբրև լուան ազգքն զձայն փողոյն՝ զսրնգին, զտաւղի և զնուագարանաց, և զամենայն ազգաց արուեստականաց, անկանէին ամենայն ազգքն և ազինք և լեզուք՝ և երկիր պագանէին պատկերին ոսկւոյ, զոր կանգնեաց արքայն Նաբուգոդոնոսոր։ Յայնժամ մատեան արք Քաղդէացիք և եղեն չարախօս զՀրէից առ Նաբուգոդոնոսորայ, և ասեն. արքայ յաւիտեան կեաց. դու հրաման ետուր ամենայն մարդոյ՝ որ լսիցէ զձայն փողոյ՝ զսրնգի և զքնարի և զտաւղի և զնուագարանաց, և զամենայն ազգաց արուեստականաց. և որ ոչն անկեալ երկիր պագանիցէ պատկերին ոսկւոյ՝ անկցի ի հնոց հըրոյն բորբոքելոյ։ Արդ են աստ արք հրեայք՝ զորս կա-

ցուցեր ի վերայ գործոց աշխարհիս Բաբելացւոց, Սեդրաք, Միսաք և Աբեդնագով, որ ոչ հնազանդեցան հրամանի քում արքայ, և զդիս քո ոչ պաշտեն, և պատկերիդ ոսկւոյ զոր կանգնեցեր՝ երկիր ոչ պագանեն։ Յայնժամ Նաբուգոդոնոսոր սրտմտութեամբ և բարկութեամբ հրամայեաց ածել զՍեդրաք՝ Միսաք և զԱբեդնագով, և ածին առաջի թագաւորին։ Պատասխանի ետ Նաբուգոդոնոսոր և ասէ ցնոսա. թէ արդարև, Սեդրաք, Միսաք և Աբեդնագով, զդիս իմ ո՞չ պաշտիցէք, և պատկերին ոսկւոյ զոր կանգնեցի երկիր ո՞չ պագանիցէք։ Բայց արդ եթէ պատրաստ լինիցիք, զի յորժամ լսիցէք զձայն փողոյ՝ սրնգի և թմբկի և քնարի, և զմիաբանութիւն ամենայն ազգաց արուեստականաց, անկանիցիք և երկիր պագանիցէք պատկերին զոր արարի. ապա թէ ոչ պագանիցէք երկիր, ի նմին ժամու անկանիցիք ի հնոց հրոյն բորբոքելոյ. և ո՞վ է Աստուած՝ որ փրկէ զձեզ ի ձեռաց իմոց։ Պատասխանի ետուն Սեդրաք, Միսաք և Աբեդնագով, և ասեն ցարքայ Նաբուգոդոնոսոր. ոչ ինչ է պիտոյ վասն բանիդ այդորիկ տալ քեզ պատասխանի. զի է մեր Աստուած յերկինս՝ զոր մեքն պաշտեմք, կարող է փրկել զմեզ ի հնոցէ հրոյդ բորբոքելոյ և ի ձեռաց քոց արքայ, ապրեցուցանել զմեզ. ապա թէ ոչ այս ինչ յայտնի լիցի քեզ արքայ, զի զդիս քո մեք ոչ պաշտեմք, և պատկերիդ ոսկւոյ զոր կանգնեցեր՝ երկիր ոչ պագանեմք։ Յայնժամ Նաբուգոդոնոսոր լի եղև սրտմտութեամբ և գոյն երեսաց նորա շրջեցաւ ի վերայ Սեդրաքայ, Միսաքայ և Աբեդնագովի, և ասէ. ջեռուցէք զհնոցն եօթնպատիկ, զի մինչև ի վախճան այրեսցին։ Եւ արք հինգ՝ զօրաւորք զօրութեամբ կապեսցեն զՍեդրաք՝ Միսաք և զԱբեդնագով՝ արկանել ի հնոց հրոյն բորբոքելոյ։ Յայնժամ արքն այնոքիկ կապեցան պատմուճանօք և վարտեօք, արտախուրակօք և զանկապանօք իւրեանց, և ընկեցան ի մէջ հնոցի հրոյն բորբոքելոյ. զի հրաման թագաւորին սաստկանայր, և հնոցն բորբոքէր եօթնպատիկ առաւել յոյժ։ Եւ երեքեան նոքա՝ Սեդրաք, Միսաք և Աբեդնագով, անկան ի մէջ հնոցին կապեալք. գնային ի մէջ հրոյն, օրհնէին և գովէին զՏէր Աստուած։ Յարեաւ Ազարիա և կաց յաղօթս այսպէս. եբաց զբերան իւր ի մէջ հրոյն և ասէ. Օրհնեալ

ես Տէր Աստուած հարցն մերոց, գովեալ և փառաւորեալ է անուն քո յաւիտեանս. զի արդար ես յամենայնի զոր ածեր ի վերայ մեր, և ամենայն գործք քո ճշմարիտ են. և ուղիղ են ճանապարհք քո, և ամենայն դատաստանք քո ճշմարտութիւն: Եւ իրաւունս ճշմարտութեան արարեր ըստ ամենայնի՝ զոր արարեր մեզ և քաղաքին սրբոյ հարցն մերոց Երուսաղեմի: Զի ճշմարտութեամբ և յիրաւի ածեր զայս ամենայն վասն մեղաց մերոց. զի մեղաք և անօրինեցաք յապստամբ լինելն ի քէն, և առաւել մեղաք յամենայնի, և պատուիրանաց քոց ոչ անսացաք: Ոչ պահեցաք և ոչ արարաք որպէս պատուիրեցեր մեզ՝ զի բարի լինիցի մեզ: Եւ զամենայն զոր ածեր ի վերայ մեր և զամենայն զոր արարեր մեզ՝ արդար դատաստանաւ արարեր: Եւ մատնեցեր զմեզ ի ձեռս թշնամեաց մերոց՝ անօրինաց խստաց և ապստամբողաց, և թագաւորի անիրաւի և չարի քան զամենայն երկիր: Եւ արդ ոչ գոյ մեզ բանալ զբերանս մեր, զի ամօթ և նախատինք եղաք ծառայից քոց պաշտօնէից: Այլ մի՛ մատներ զմեզ իսպառ վասն անուան քո, և մի՛ ցրեր զուխտ քո, և մի՛ ի բացէ առներ զողորմութիւն քո ի մէնջ: Վասն Աբրահամու սիրելւոյ քո և վասն Իսահակայ ծառայի քո և վասն Իսրայելի սրբոյ քո, °որոց խօսեցար բազմացուցանել զզաւակ նոցա իբրև զաստեղս երկնից, և իբրև զաւազ առ ափն ծովու: Եւ արդ Տէր, նուազեցաք քան զամենայն ազգս, և եմք տառապեալք յամենայն երկրի այսօր վասն մեղաց մերոց. և ոչ գոյ ի ժամանակի յայսմիկ իշխան՝ մարգարէ և առաջնորդ, ոչ ողջակէզք և ոչ զոհք և ոչ պատարագք և ոչ խունկք, և ոչ տեղի տալոյ երախայրիս առաջի քո, և գտանել զողորմութիւն: Այլ անձամբք բեկելովք և հոգւովք տառապանաց ընդունելի լիցուք՝ իբրև զողջակէզս խոյոց և զուարակաց և իբրև զբիւրաւորս գառանց պարարտաց, այնպէս եղիցի պատարագս մեր այսօր առաջի քո՝ լինել կատարեալ զկնի քո զի չիք ամօթ յուսացելոցս ի քեզ: Եւ արդ զամք զհետ քո ամենայն սրտիւք մերովք, և երկնչիմք մեք ի քէն, և խնդրեմք զերեսս քո. մի՛ յամօթ առներ զմեզ, այլ արա ընդ մեզ ըստ հեզութեան քում և ըստ բազում ողորմութեան քում, և փրկեա զմեզ վասն սքանչելեաց քոց, և տուր փառս անուան

քում Տէր ։ Եւ յամօթ լիցին ամենեքեան որք ցուցանեն չարիս ծառայից քոց, և ամաչեսցեն յամենայն բռնութեան իւրեանց, և զօրութիւն նոցա խորտակեսցի. և ծանիցեն զի դու ես Տէր Աստուած միայն, և փառաւորեալ ի վերայ ամենայն տիեզերաց ։ Եւ ոչ դադարէին որք արկին զնոսա սպասաւորք թագաւորին՝ զհնոցն բորբոքելոյ նաւթիւ և ձիթով և վշով և որթով. և ելանէր դիզանայր բոցն ի վերոյ քան զհնոցն ի քառասուն և յինըն կանգուն. և շրջէր պատէր շուրջ զհնոցաւն, և այրէր զորս գտանէր ի Քաղդէացւոց անտի ։ Եւ հրեշտակ Աստուծոյ էջ եկաց ընդ Ազարիանու ի հնոցի անդ, և թօթափեաց զբոց հրոյն ի հնոցէ անտի, և արար ի մէջ հնոցին իբրև զհողմ որ ցօղագին շնչիցէ. և ոչ մերձենայր ամենևին հուրն ի նոսա, ոչ տրտմեցուցանէր և ոչ նեղէր զնոսա ։ Յայնժամ երեքեան իբրև ի միոջէ բերանոյ օրհնէին և գովէին և փառաւոր առնէին զԱստուած ի մէջ հնոցին՝ և ասէին. Օրհնեալ ես դու Տէր Աստուած հարցն մերոց, գովեալ և առաւել բարձրացեալ յաւիտեանս ։ Եւ օրհնեալ է անուն սուրբ փառաց քոց, գով ։ Օրհնեալ ես ի տաճարի փառաց սրբութեան քո, գով ։ Օրհնեալ ես ի վերայ աթոռոյ արքայութեան քո, գով ։ Օրհնեալ ես որ հայիս յանդունդս և նստիս ի քրովբէս, գով ։ Օրհնեալ ես որ նստիս ի հաստատութեան երկնից, գով ։ Օրհնեցէք ամենայն գործք Տեառն զՏէր, օրհնեցէք և բարձր արարէք զնա յաւիտեան ։ Օրհնեցէք երկինք զՏէր, օրհնեցէք ։ Օրհնեցէք հրեշտակք Տեառն զՏէր, օրհն ։ Օրհնեցէք ջուրք ամենայն որ ի վերոյ քան զերկինս ըզՏէր, օրհ ։ Օրհնեցէք ամենայն զօրութիւնք Տեառն զՏէր, օրհ ։ Օրհնեցէք արև և լուսին զՏէր, օրհ ։ Օրհնեցէք ամենայն աստեղք երկնից զՏէր, օրհ ։ Օրհնեցէք ամենայն անձրևք և ցօղք զՏէր, օրհ ։ Օրհնեցէք ամենայն հողմք զՏէր, օրհ ։ Օրհնեցէք հուր և տապ զՏէր, օրհ ։ Օրհնեցէք ցուրտ և սառն զՏէր, օրհ ։ Օրհնեցէք եղեամն և ձիւն զՏէր, օրհ ։ Օրհնեցէք տիւք և գիշերք զՏէր, օրհ ։ Օրհնեցէք լոյս և խաւար զՏէր, օրհ ։ Օրհնեցէք ամպք և փայլատակունք զՏէր, օրհ ։ Օրհնեսցէ երկիր զՏէր, օրհնեսցէ և բարձր արասցէ զնա յաւիտեան ։ Օրհնեցէք լերինք և բարձունք զՏէր, օրհ ։ Օրհնեցէք ամենայն բոյսք երկրի զՏէր, օրհ ։ Օրհնեցէք աղբիւրք զՏէր, օրհ ։ Օրհնեցէք ծով և գետք զՏէր, օրհ ։ Օրհնեցէք կէտք և ամենայն կայ-

Digitized by Google

տառք որ ի ջուրս զՏէր, օրհ: Օրհնեցէք թռչունք երկնից զՏէր. օրհ: Օրհնեցէք ամենայն գազանք և անասունք զՏէր, օրհ: Օրհնեցէք որդիք մարդկան զՏէր, օրհ: Օրհնեսցէ Իսրայէլ զՏէր օրհնեսցէ և բարձր արասցէ զնա յաւիտեան: Օրհնեցէք քահանայք զՏէր, օրհ: Օրհնեցէք ծառայք Տեառն զՏէր, օրհ: Օրհնեցէք հոգիք և շունչք արդարոց զՏէր, օրհ: Օրհնեցէք սուրբք և խոնարհք սրտիւք զՏէր, օրհ: Օրհնեցէք Անանիա՝ Ազարիա և Միսայէլ զՏէր, օրհ: Զի փրկեաց զմեզ ի դժոխոց, և ի ձեռաց մահու ապրեցոյց զմեզ. և փրկեաց զմեզ ի հնոցէս, և ի միջոյ բորբոքեալ բոցոյս, և ի միջոյ հրոյս փրկեաց զմեզ: Գոհացարուք զՏեառնէ, զի քաղցր է, զի յաւիտեան է ողորմ նորա: Օրհնեցէք ամենայն պաշտօնեայք Տեառն զԱստուածն աստուծոց: Օրհնեցէք և գոհացարուք, զի յաւիտեան է ողորմ նորա: 91:

Եւ Երբ զՕրհնեցէք ամենայն գործքն ասեն, դպիրն երգեն զայս ձայնիւ, ասելով.

Օրհնեցէք, գովեցէք և բարձր արարէք զնա յաւիտեան:

Եւ ի կատարման հարցն ասեմքն, բացցեն զվարագոյրն և սարկաւագն բարձր ձայնիւ գոչեսցէ. Օրհնեա տէր: Եւ ժամարարն. Օրհնեալ թագաւորութիւնն: Եւ պատարագն մատչի:

Զկնի աւարտման պատարագին Նախատօնակ ասեն ասելով,

ՇԱՐԱԿԱՆ ԱՁ

Այսօր յարեաւ ի մեռելոց. Տես իւր կարգն ի թիւն 529 և զկնի ի թիւն 531. և զկնի ընթեռնուն զաւետարանն ի բեմին:

Օրթի

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի: ԻԸ. 16:

Ցետ յարութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի:

Իսկ մետասան աշակերտքն գնացին ի Գալիլեա ի լեառնն՝ ուր ժամադիր եղև նոցա Յիսուս. իբրև տեսին զնա՝ երկիր պագին նմա, և ոմանք յերկուացան: Եւ մատուցեալ Յիսուս խօսեցաւ ընդ նոսա և ասէ. տուաւ ինձ ամենայն իշխանութիւն յերկինս և յերկրի. որպէս առաքեաց զիս Հայր, և ես առաքեմ զձեզ: Գնացէք այսուհետև՝ աշակերտեցէք զամենայն հեթանոսս, մկրտեցէք զնոսա յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ: Ուսուցէք նոցա պահել զամենայն՝ որ ինչ պատուիրեցի ձեզ: Եւ ահաւասիկ ես ընդ ձեզ եմ զամենայն աւուրս՝ մինչև ի կատարած աշխարհի: 20:

Քար. Խնդր: Կեցո. Ձայնիւ: Աղ. Թագաւոր: Հայր մեր:

Digitized by Google

# ԿԻՐԱԿԷ ԱԶ

## ԶԱՏԻԿ ՅԱՐՈՒԹԵԱՆ

## ՏԵԱՌՆ ՄԵՐՈՅ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ



### Ի ԳԻՇԵՐԻ

ԿԱՆՈՆԱԳԼՈՒԽ ԱԶ. Դատեա Տէր։

ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԱԶ

ԱՅՍՕՐ յարեաւ ի մեռելոց փեսայն անմահ եւ երկնաւոր. քեզ աւետիք խնդութեան. հարսն ի յերկրէ եկեղեցի. ‖ օրհնեա ի ձայն ցնծութեան զԱստուած քո Սիոն։ Այսօր անմահ լոյսն ի լուսոյ լուսաւորեաց զմանկունս քո. լուսաւորեաց Երուսաղէմ. քանզի յարեաւ լոյս քո Քրիստոս. օրհնեա։ Այսօր խաւարն անգիտութեան հալածեցաւ երրեակ լուսովն. եւ քեզ ծագեցաւ լոյս գիտութեան. յարութեամբն ի մեռելոց Քրիստոս. օրհնեա։

✝ Այսօր զատիկ մեր զենմամբ Քրիստոսի. ուրախացուք տօն ցնծութեամբ. Նորոգեալքս ի հնութենէ մեղաց ասելով ‖ Քրիստոս յարեաւ ի մեռելոց։ Այսօր հրեշտակըն լուսափայլ ի յերկնից իջեալ. զարհուրեցոյց ըզպահապանսն. եւ սուրբ կանանցըն քարոզէր ասելով Քրիստոս։

Ընդ լուսանալ միաշաբաթին կանխեցին կանայքն ի գերեզմանն. ի խնկել զանապական մարմինն։ Եւ գտին ըզվէմըն բարձեալ ի դրանց գերեզմանին. եւ լուեալ բարբառ ի հրեշտակէն. եթէ յարեաւ Քրիստոս և խափանեաց ըզմահ։ Եւ հանդիպեալ քո Տէր առաքելոցն. եւ տուեալ ողջոյն կենդանարար. առաքեցեր զնոսա ի փրկութիւն տիեզերաց։



Digitized by Google

Փառօք յարութեան քո Տէր։ Պատրանօք նախաստեղծին մերկացաք ի լուսոյն. իսկ յարութեամբ Միածնիդ զգեցաք զանմահութիւն փառօք։ Խաբանօք փայտին ճաշակեցաք զմահ. իսկ ի փայտէն կենաց նորոգեցաք ամենեքեան փառօք։

Ընդ կանայսն իւղաբերսն առ քեզ առաւօտեմք կենդանւոյդ յաւիտենից Քրիստոս ընկալ և զմերս. փոխանակ խնկոցն զօրհնաբանութիւնս։ Փոխանակ սուրբ աւետաւոր զուարթնոյն. գթութիւն քո մեզ հանդիպեսցի յուսով գիտութեան. մխիթարել զհոգիս եւ լուսաւորել։ Ընդ նոսին աւետարանութեամբ քարոզեսցուք. զքո միայն զսքանչելիսդ. որ յարեար ի մեռելոց ամենազօր թագաւոր անմահ։

Որ անճառ էութեամբ Հօրդ ես փառակից. չարչարիլ մարմնով յանձն առեր վասն մեր. ‖ մշտընջենաւոր օրհնութեամբ ի հրեշտակաց օրհնեալ ես Տէր։ Որ էակից ես ընդ Հօր եւ սուրբ Հոգւոյն. խոնարհեցար և թաղեցար կամաւ Հօր վասն մեր. մշտընջենաւոր։ Որ միւսանգամ գալոց ես հայրենի փառօք. շնորհելով աստուածապէս յարութիւն տիեզերաց. յամենայն արարածոց յաւիտենից օրհնեալ ես Տէր։

ՀԳ. Որ ի քերովբէական կառսդ հանգչիս. այսօր իջեր յերկնից ի դաս առաքելոցն սուրբ Հոգի. ‖ օրհնեալ ես թագաւոր անմահ։ Որ գնաս ի վերայ թեւոց հողմոց. այսօր ի հրեղէն լեզուս բաժանեալ հանգեար յառաքեալսն սուրբ Հոգի. օրհնեալ։ Որ խնամես տեսչութեամբ զքո զարարածս. այսօր եկիր ի հաստատել զեկեղեցի քո սուրբ Հոգի. օրհնեալ։

ՀՆ. Զհոգիս ծառայից քոց Քրիստոս. ընկալ ի դաս անդրանկաց գրելոց ի յերկինս։ Ընկալ վասն սոցա

Digitized by Google

ընդունելով պատարագս ի մէնջ. եւ շնորհեա նոցա ընդ թողութիւն գտանել յաւուրն յետնում։ Հաշտեաց ի ձեռն սուրբ մարմնոյ և արեան քո Տէր. եւ պարգեւեա նոցա գտանել յաջակողմեանսն քո։

ՄԾ. Ցարուցելոյն ի մեռելոց բնակարան մայր եւ կոյս. որ ընդունեցեալդ յԱդամայ կենագործէ անապական. || զքեզ մեծացուցանեմք որ օրհնեալդ ես ի կանանայս։ Արարողին երկնի և երկրի եղեր տաճար և առագաստ. որ ընդունեցեալդ մեր հրեղէն նորոգէ. զքեզ։ Կերակրողին տիեզերաց արբուցեր ընդ քո սուրբ ընդ կաթն. որ ընդունեցեալդ մեր վերստին նորոգէ. զքեզ։

ԽԶ. Որ զանարատ բազուկս քո ի խաչին տարածեցեր Քրիստոս Աստուած. եւ նշան յաղթութեան ետուր մեզ. || սովաւ ընկեանս մեր պահեա։ Որ զաշխարհակեցայց բազկատարածութիւն խաչի քո Քրիստոս Աստուած. զաւազան զօրութեան ետուր մեզ. սովաւ։
— Փառք Հօր։ Որ ընդմեռեալն ի ճաշակմանէ փայտին յանցանաց. կենաց փայտիւն կենագործեցեր. սովաւ։

— Այժմ և միշտ։ Այսօր նոր խորայծել կոչեցեալք ի Քրիստոս. ազատեալք արեամբ գառին Աստուծոյ. պարեցուք ընդ երկնայնոցն ասելով Քրիստոս յարեաւ ի մեռելոց։

Մաղթանք. Փառք հրաշափառ յարութեան. առ մինչև ցՀամբարձումն։

Ալէլուիա. Ցորոնեան ԱԶ

---

ՅԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԴԿ

Այսօր մեծ աւետիք Ադամայ նախաստեղծին տըւաւ.

մրի որ նընջես լուսաւոր. եղեւ քեզ յարուցեալըն Քրիստոս ‖ Աստուած հարցըն մերոց։ Այսօր ձայն աւետեաց յեւային գուշեն լըսելիս դըստերքն իւղաբերք տեառն յարուցեալ ըզյարութիւնըն քո ըզՔրիստոս Աստուած։ Այսօր հրեշտակք յերկնից իջեալ տան զաւետիս մարդկան. յարեաւ խաչեցեալն և յարոյց ըզձեզ ընդ ինքեան Աստուած։

Գ. ԸզՏէր ‖ օրհնեցէք եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան։ Այսօր Տէրըն մեր յարեաւ. եկայք պարեսցուք ընդ հրեշտակս. յաղթական երգով օրհնեցէք։ Այսօր սիւն լուսոյ ծագեաց. սուրբ եկեղեցւոյ յարուցեալն ի մեռելոց Քրիստոս օրհնեցէք։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԴԿ

Աստուածածին տաճար լուսոյ. որ մարմնով պարագրեալ անճառաբար ծընար ըզԲանն Աստուած ‖ զքեզ բարեբանեալ մեծացուցանեմք։ Ուրախ լեր և բերկրեա մայր եւ կոյս. քանզի ծնեալն ի քումէդ այսօր վերըստին յարութեամբ ծընաւ ի կոյս գերեզմանէն. զքեզ։ Ցընծա և զուարճացիր հարսն ի յերկրէ երկնից. քանզի այսօր երկնայնոցն իջեալ տային քեզ զաւետիս յարութեան միածնի Որդւոյ քո. զքեզ։

Իւղաբերից Աւետ. Յովհ։ Ի. 1։ Եւ ի միաշաբաթոջն։ 18։
Ներք փառք յարութեան։ Գիշերի Լուսապայծառ։

ՈՂՈՐՄԵԱ ԴԿ

Այսօր ըզպատեանս չարչարանաց ելից Իսրայելի փոխեցեր. ի փրկութիւն հոգւոց զամենիկ սուրբ յարութեամբ քո Քրիստոս։ Այսօր ընդ արեանցն օրինակին անբանն զաւանցըն զենմանց. պարգեւեցեր մեզ զանն Աստուծոյ զարիւնըդ քո փրկական։ Այսօր ընդ անդրանկացն ազատութեան ազատեցեր ըզգերեալսն. պըտուղ կենաց նընջեցելոց և անդրանիկ մեռելոց։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԴԿ

Այսօր հրեշտակք ի յերկինս. ուրախանան ընդ մարդկան. որք իջեալ ի յերկնից տան աւետիս աշխարհի. ցնծացէք այսօր ‖ Քրիստոս յարեաւ ի մեռելոց։ Այսօր զուարթունն ի վիմին. խնկաբերից սուրբ կանանցն. փողէր ձայնիւ ցնծութեամբ պատմել աշակերտացն ասելով. ցնծացէք այսօր Քրիստոս։ Այսօր վիմին հաւատոյ. եւ Յովհաննու սիրելւոյ. ընդ հակառակս ընթացեալ ի գերեզման յարուցելոյն. զոր տեսեալ պատմէին Քրիստոս։ Այսօր եւ մեք զուարճացեալք. պայծառացուք տօնիւս. ընդ հաշտութեան Աստուծոյ միմեանց արկցուք զիրկս սիրով. եւ միաբան գոչեսցուք Քրիստոս։

Առաւօտու Երգ՝ յարութեան է յայնէն։ Քար. Ասասցուք։

Զկնի Սուրբ Աստուածին ճաշու ժամուն. Մաղ. Փրկեա զմեզ։ Քար. Վասն լսելի։ Քահ. Օրհնութիւն և փառք։ Եւ ելանեն ի դասն եկեղեցւոյն խաչիւ և աւետարանաւ, խնկով և մոմեղինօք, և ամենայն զարդու. և ասեն

ՇԱՐԱԿԱՆ ԱՁ

Այսօր յարեաւ ի մեռելոց փեսայն։ Երգէ դասն։ 529։

ՍԱՂՄՈՍ ԿԴ. է Ձայն

Փխ. Քեզ վայել է օրհնութիւն Աստուած ի Սիոն։ 353։

Ալէլուիա. ալէլուիա։

ԸՆԹԵՐՑՈՒԱԾ ի Գործոց առաքելոց: Ա. 1

Զբանն առաջին զոր արարի՝ վասն ամենայնի, ո Թէոփիլէ, զոր սկսաւ Յիսուս առնել և ուսուցանել, մինչև յօրն պատուիրելոյ առաքելոցն ի ձեռն Հոգւոյն սրբոյ՝ զորս ընտրեացն, և վերացաւ։ Որոց յանդիման կացոյց զինքն կենդանի յետ չարչարանացն իւրոց, ի բազում առուեստս, յաւուրս քառասուն երևել նոցա և ասել վասն արքայութեանն Աստուծոյ։ Եւ ի հաղորդել ընդ նոսա հացի՝ պատուէր տայր նոցա յԵրուսաղեմէ մի՛ մեկնել, այլ սպասել աւետեացն Հօր՝ զոր լուարուքն յինէն։ Զի

Յովհաննէս մկրտեաց ի ջուր, այլ դուք մկրտեցիք ի Հոգին սուրբ, ոչ յետ բազում ինչ աւուրցս այսոցիկ: Եւ նոքա մատուցեալ հարցանէին զնա և ասէին. Տէր, եթէ ի ժամանակի՞ աստ յայսմիկ հաստուցանելոց իցես զարքայութիւնն Իսրայելի: Ասէ ցնոսա. ոչ է ձեզ գիտել ըզժամս և զժամանակս, զոր Հայր եդ յիւրում իշխանութեան. այլ առջիք զօրութիւն ի հասանել Հոգւոյն սրբոյ ի վերայ ձեր, և եղիջիք ինձ վկայք յԵրուսաղէմ և յամենայն Հրէաստանի և ի Սամարիա, և մինչև ի ծագս երկրի: 8:

Ձայնի- Ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա:

Հաստեալ կային ոտք մեր առ դրունս քո Երուսաղէմ:

Ալէլուիա, Օրթի

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մարկոսի: ԺԶ. 2:

Վասն յարութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի:

Եւ ընդ առաւօտս միաշաբաթուն գան ի գերեզմանն ընդ արևագալն, և ասէին ցմիմեանս. ո՞վ թաւալեցուսցէ մեզ զվէմն ի դրաց գերեզմանին: Եւ հայեցեալ տեսին՝ զի թաւալեցուցեալ էր զվէմն ի գերեզմանէն. քանզի էր մեծ յոյժ: Եւ մտեալ ի ներքս ի գերեզմանն, տեսին երիտասարդ մի՝ զի նստէր ընդ աջմէ կողմանէ՝ ըզգեցեալ պատմուճան սպիտակ, և զարհուրեցան: Եւ նա ասէ ցնոսա. մի՛ երկնչիք. զՅիսուս խնդրէք զՆազովրեցի զխաչելեալն, յարեաւ՝ չէ աստ. ահաւադիկ տեղին ուր եդին զնա: Այլ երթայք ասացէք ցաշակերտսն նորա և ցՊետրոս, եթէ ահա յառաջագոյն երթայ քան ըզձեզ ի Գալիլեա, անդ տեսանիցէք զնա՝ որպէս ասացն ձեզ: Եւ իբրև լուան՝ ելին և փախեան ի գերեզմանէն, քանզի զահի հարեալ էին. և ոչ ումեք ինչ ասացին, զի երկնչէին: 8:

Եւ շուրջ գալով զեկեղեցեաւն, նախ երգեն յարութեան երգմըն առնելով

ՇԱՐԱԿԱՆ ԱՁ

Ընդ լուսանալ միաշաբաթին: Ա. երեք տուն: 28:

Զկնի Օրթի Դէպ յարութեան կոչում:

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Յովհաննու: ԺԹ. 38:

Վասն թաղման Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի:

Յետ այսորիկ աղաչեաց զՊիղատոս Յովսէփ որ յԱրի-

Digitized by Google

մաթեայ էր, աշակերտ Յիսուսի ի ծածուկ վասն ահին Հրէից, զի բարձցէ զմարմինն Յիսուսի. և հրամայեաց Պիղատոս. եկին և բարձին զնա։ Եկն և Նիկոդեմոս՝ որ եկեալն էր առ Յիսուս՝ ի գիշերի զառաջին, և եբեր զըմուռս խառն ընդ հալուէս՝ իբրև լտերս հարիւր։ Առին զմարմինն Յիսուսի, և պատեցին կտաւովք խնկովքն հանդերձ, որպէս օրէն էր Հրէից պատել. Եւ էր ի տեղւոջն յորում խաչեցաւ՝ պարտէզ, և ի պարտիզի անդ գերեզման նոր, յորում ոչ ոք երբեք էր եդեալ։ Անդ վասն ուրբաթուն Հրէից, զի մօտ էր գերեզմանն, եդին զՅիսուս։ 42։

Ն— Երգեան յարութեան կողմն առեղով

ՇԱՐԱԿԱՆ ԱԿ

Առաջնեցար ի Հօրէ Բանդ Աստ։ Ա․ Երգէ տուն։ 29։

Ձայնէ Օրթի Դեղ յարութեան կարգա։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու։ ԻԳ․ 50։

Վասն թաղման Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։

Եւ ահա այր մի, անուն Յովսէփ, որ էր Նախարար՝ այր բարեգործ և արդար, սա չէր միաբանեալ ընդ խորհուրդս և ընդ գործս նոցա, յԱրիմաթեայ քաղաքէ Հրէից, որ և ինքն իսկ ակն ունէր արքայութեան Աստուծոյ. սա մատուցեալ առ Պիղատոս՝ խնդրեաց զմարմինն Յիսուսի. և իջուցեալ զնա պատեաց պատատանօք, և եդ ի կռածոյ գերեզմանին, ուր չէր բնաւ զոք եդեալ։ Եւ օրն էր ուրբաթ, և շաբաթ լուսանայր. և երթային զհետ նորա կանայք՝ որ եկեալ էին ընդ նմա ի Գալիլեէ, տեսին զգերեզմանն, և որպէս եդաւ մարմինն նորա։ Դարձան, և պատրաստեցին խունկս և իւղս, և ի շաբաթուն հանդարտեցին վասն պատուիրանին։ 56։

Ն— գոյն ի հոգեւորայն կողմն առեղով

ՇԱՐԱԿԱՆ ԲԶ

Ի գերեզման քո կանխեցին կան։ Ա․ Երգէ տուն։ 32։

Ձայնէ Օրթի Դեղ ի հոգեւոր կարգա։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մարկոսի։ ԺԵ․ 42։

Վասն թաղման Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։

Եւ իբրև երեկոյ եղև, քանզի ուրբաթ էր՝ որ ի շաբաթըն մտանէր, եկեալ Յովսէփ որ յԱրիմաթեայն էր, այր

Digitized by Google

պարկեշտ , Նախարար , որ և ինքն իսկ ակն ունէր արքայութեանն Աստուծոյ , համարձակեցաւ եմուտ առ Պիղատոս , և խնդրեաց զմարմինն Յիսուսի : Եւ Պիղատոս զարմացաւ , թէ այնչափ վաղ մեռաւ . և կոչեցեալ առ ինքն զհարիւրապետն , եհարց զնա և ասէ , թէ արդարև այնչափ վա՞ղ մեռաւ : Եւ իբրև ստուգեաց ի հարիւրապետէ անտի , շնորհեաց զմարմինն Յովսեփայ : Եւ Յովսէփ գնեաց կտաւ , և իջուցեալ զնա՝ պատեաց կտաւովն, և եդ ի գերեզմանի՝ զոր էր փորեալ ի վիմէ , և թաւալեցոյց վէմ մի ի դուռն գերեզմանին : Իսկ Մարիամ Մագդաղենացի և Մարիամ Յակովբայ և Յովսեայ տեսին ըզտեղին ուր եդաւ : Եւ իբրև անց շաբաթն , Մարիամ Մագդաղենացի և Մարիամ Յակովբայ և Սողոմէ՝ չոքան պատրաստեցին խունկս , զի եկեսցեն օծցեն ըզնա : ԺԶ . 1 :

Ե՟ գ՟ն է հ՟խ՟յին խ՟ղն տ՟ելով

ՇԱՐԱԿԱՆ ԲԿ

Քո յարութեանդ փառք վայելէ : Ա . Եղե՟ փ՟ն : 36 :

Զկնի Օրթի Դ՟եղ է հ՟տ՟ի կ՟րգ՟ :

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի : Իէ . 57 :

Վասն թաղման Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի :

Եւ իբրև երեկոյ եղև , եկն այր մի մեծատուն յԱրիմաթեայ , որում անուն էր Յովսէփ , որ աշակերտեցաւ իսկ Յիսուսի . սա մատուցեալ առ Պիղատոս խնդրեաց զմարմինն Յիսուսի . յայնժամ Պիղատոս հրամայեաց տալ ըզմարմինն : Եւ առեալ զմարմինն Յովսէփ՝ պատեաց սուրբ կտաւովք , և եդ ի նոր գերեզմանի՝ զոր փորեաց ի վիմի . և թաւալեցուցեալ կափարիչ դրան գերեզմանին վէմ մի մեծ՝ գնաց : Անդ էր Մարիամ Մագդաղենացի , և միւս Մարիամն , նստէին հանդէպ գերեզմանին : Եւ ի վաղիւ անդր՝ որ է յետ ուրբաթուն , ժողովեցան քահանայապետքն և փարիսեցիքն առ Պիղատոս , և ասեն . տէր , յիշեցաք զի մոլորեցուցիչն այն ասէր մինչ կենդանին էր , թէ յետ երից աւուրց յառնեմ : Արդ հրամայեա զգուշանալ գերեզմանին մինչև ցերիս աւուրս , գուցէ եկեալ աշակերտքն գիշերի՝ գողանայցեն զնա , և ասիցեն ժողովրդեանն , թէ յարեաւ ի մեռելոց , և լինիցի

Digitized by Google

յետին մոլորութիւնն չար քան զառաջինն ։ Ասէ ցնոսա Պիղատոս․ ունիք զզօրականն, երթայք զգուշացարուք որպէս և գիտէք։ Եւ նոքա երթեալ զգուշացան գերեզմանին, և կնքեցին զվէմն հանդերձ զօրականօքն ։ 66 ։

Եւ ասա ժամ յարեանն, յարեւմտեան կողմն անկեալ

ՇԱՐԱԿԱՆ ԽԱՉԻ ԱՁ

Որ զանարատ բազուկս քո ։ Ա․ Երգ․ տուն ։ 156 ։

Զկնի ՍԱՂՄՈՍ Դ․ Յաւելու․

Կ8․ Նշանեցաւ առ մեզ լոյս երեսաց քոց․ և ետուր ուրախութիւն սրտից մերոց ։

Փխ․ Ի կարդալ իմում լուար ինձ Աստուած ։ 438 ։

Զկնի Ալէլուիա Օրթի

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Յովհաննու ։ ԺԹ․ 16 ։

Վասն խաչելութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ։

Յայնժամ ետ զնա ի ձեռս նոցա, զի ի խաչ ելանիցէ։ Եւ նոքա առեալ տանէին զնա․ և բարձեալ էր ինքնին զխաչափայտն, և ելանէր ի տեղին՝ որ անուանէր գագաթան, և կոչէր եբրայեցերէն Գողգոթա․ ուր և ի խաչն իսկ հանին զնա, և ընդ նմա երկուս ևս այլս աստի և անտի, և ի միջի զՅիսուս ։ Գրեաց և տախտակ մի Պիղատոս, և եդ ի վերայ խաչին․ և էր գրեալ․ Յիսուս Նազովրեցի Թագաւոր Հրէից ։ Զայն տախտակ ընթերցան բազումք ի Հրէից, զի մօտ էր ի քաղաք անդր տեղին՝ ուր խաչեցաւն Յիսուս․ և էր գրեալ եբրայեցերէն՝ դաղմատերէն և յունարէն ։ Ասէին ցՊիղատոս քահանայապետքն Հրէից․ մի՛ գրեր Թագաւոր Հրէից, այլ թէ նա ասաց՝ Թագաւոր եմ Հրէից։ Պատասխանի ետ Պիղատոս․ զոր ինչ գրեցի՝ գրեցի ։ 22 ։

Ասա Մաղթ․ Խորհուրդ․ Եւ ևս խաղաղութեան ։ Վասն ի վերուստ ։ Եւ փառատրեսն ընթերցուածն․ և Զկնի՝ Քարոզ․ Սուրբ խաչիւ ։ Աղ․ Պահպանեա ։

Եւ է քառասնորդաց յեկեղեցին՝ օրհնեն Երգ Նորաստեղծեալ բանին ։ Քար․ Խնդր ։ Կեցո ։ Յաւելու ։ Աղ․ Քում ամենազօր և հրաշալի յարութեանդ․ ասա մինչև ցՀամբարձումն ։

առաւօտուն ընդ արշալուսն ի գերեզման անդր, և տեսանէ զվէմն բարձեալ ի դրաց գերեզմանին։ Ապա ընթանայ և գայ առ Սիմովն Պետրոս և առ միւս աշակերտն զոր սիրէր Յիսուս, և ասէ ցնոսա. բարձին զՏէր ի գերեզմանէ անտի, և ոչ գիտեմ ուր եդին զնա։ Ել Պետրոս և միւս աշակերտն՝ և գային ի գերեզմանն. ընթանային երկոքեան ի միասին։ Եւ միւս աշակերտն յառաջեաց ընթացաւ վաղագոյն քան զՊետրոս՝ և եկն նախ ի գերեզմանն. և խոնարհեալ տեսանէ՝ զի կային անդ կտաւքն, բայց ի ներքս ոչ եմուտ։ Եկն և Սիմովն Պետրոս՝ որ գայրն զկնի նորա, և եմուտ ի գերեզմանն. և տեսանէ զկտաւսն զի կային անդ. և վարշամակն որ էր ի գլուխ նորա՝ ոչ ընդ այլ կտաւսն կայր, այլ առանձին ծալեալ ի մի կողմն։ Յայնժամ եմուտ և միւս աշակերտն, որ եկեալ էր յառաջագոյն ի գերեզմանն, ետես և հաւատաց. զի չև ևս գիտէին զգիրս՝ թէ պարտ է նմա ի մեռելոց յառնել։ Չոգան դարձեալ առ միմեանս աշակերտքն։ Բայց Մարիամ կայր արտաքոյ գերեզմանին և լայր. և մինչդեռ լայր՝ խոնարհեցաւ ի գերեզմանն, և տեսանէ երկուս հրեշտակս ի սպիտակս, զի նստէին՝ մի ի սնարից և մի յանոտից՝ ուր կայր մարմինն Յիսուսի։ Եւ նոքա ասեն ցնա. կին դու, զի՞ լաս։ Ասէ ցնոսա. զի բարձին զՏէրն իմ ի գերեզմանէ աստի՝ և ոչ գիտեմ ո՛ւր եդին զնա։ Զայս իբրև ասաց, դարձաւ ի թիկունս կոյս, և տեսանէ զՅիսուս զի կայր, և ոչ գիտէր թէ Յիսուս իցէ։ Ասէ ցնա Յիսուս. կին դու, զի՞ լաս, զո՞ խնդրես։ Նմա այսպէս թուեցաւ՝ թէ պարտիզպանն իցէ. ասէ ցնա. տէր, եթէ դու բարձեր զնա, ասա ինձ ո՛ւր եդիր զնա, զի ես առից զնա։ Ասէ ցնա Յիսուս. Մարիամ։ Եւ նա դարձաւ և ասէ ցնա եբրայեցերէն. ռաբբունի. որ թարգմանի՝ վարդապետ։ Ասէ ցնա Յիսուս. մի՛ մերձենար յիս, զի չև ևս ելեալ եմ առ Հայր իմ. այլ երթ դու առ եղբարսն իմ, և ասա ցնոսա. ելանեմ ես առ Հայրն իմ և առ Հայր ձեր. և Աստուածն իմ և Աստուած ձեր։ Գայ Մարիամ Մագդաղենացի՝ և պատմէ աշակերտացն եթէ ետես նա զՏէր, և զայս ինչ ասաց ցնա։ 18։

Եւ ապա ասէ շարական խաչի

### ՇԱՐԱԿԱՆ ԱԶ

Սուրբ խաչն օգնական հաւատացելոց. կանգնեցաւ ի յերկրի յաղթող թշնամւոյն. եկայք ժողովուրդք երկրպագեսցուք։ Արարիչն Աստուած բարձրացաւ ի խաչին. եւ զմեռեալըս մեղօք փայտին ճաշակմամբն. ի սմին նորոգեալ կենդանացոյց։ Ի միւսանգամ գա֊ լստեան Աստուածորդւոյն. սուրբ խաչն երեւի եւ լուսաւորէ. զի նա է յոյս հաւատացելոց։

### ՍԱՂՄՈՍ Դ. յայնի.

կց. Նշանեցաւ առ մեզ լոյս երեսաց քոց. և ետուր ուրախութիւն սրտից մերոց։

Փխ. Ի կարդալ իմում լուար ինձ Աստուած։ 438։

### Ջնի Օրթի

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Յովհաննու։ ժթ. 31։

Վասն խաչելութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։

Իսկ Հրեայքն՝ քանզի ուրբաթ էր, զի մի՛ անդէն ի խաչին ագանիցին մարմինքն մինչև ցշաբաթն, զի էր օր մեծ շաբաթուն այնորիկ, աղաչեցին զՊիղատոս զի խոր֊ տակեսցեն զբարձս նոցա, և բարձցին։ Եկին զինուորքն, և զառաջնոյն խորտակեցին զբարձս, նոյնպէս և զմիւսոյն որ ընդ նմա ի խաչն ելեալ էր։ Բայց իբրև եկին առ Յիսուս, և տեսին զի այն ինչ մեռեալ էր, ոչ խորտա֊ կեցին զբարձս նորա. այլ մի ոմն ի զինուորացն տիգաւ խոցեաց զկողս նորա, և վաղվաղակի ել արիւն և ջուր։ Եւ որ ետեսն՝ վկայեաց, և ճշմարիտ է վկայութիւն նո֊ րա. և նա գիտէ՝ թէ ճշմարիտ ասէ, զի և դուք հաւա֊ տասջիք։ Այս եղև, զի լցցի գիրն, եթէ ոսկր նորա մի՛ փշրեսցի. և դարձեալ միւս գիր ասէ, եթէ հայեսցին ի նա՝ յոր խոցեցինն։ 37։

Եւ քարոզէ Սարկաւագն. Եւ ևս խաղ։ Վասն ի վերուստ։ Եւ պէտականքն զանդաստանն և զչորս կողմն ողջունէ։

Ջնի Քար. Սուրբ խաչիւս։ Աղ. Պահպանեա։

Եւ ի դառնալն յեկեղեցին քարոզէ Սարկաւագն.

Եւ ևս խաղ։ Քահ. Օրհնութիւն։ Եւ տաղս ասեն. Խո֊ նարհեցո և Ապրեցո։

խնդրէք զՅիսուս զնազովրեցի, զխաչեալն, այլ յարեաւ ։ Յիշեցէք որպէս խօսեցաւ ընդ ձեզ մինչ էրն ի Գալիլեա, և ասէր՝ թէ պարտ է որդւոյ մարդոյ մատնել ի ձեռս մարդոց մեղաւորաց, և ի խաչ ելանել, և յերրորդ աւուր յառնել ։ Եւ յիշեցին զբանսն նորա ։ Եւ դարձան պատմեցին զայս ամենայն մետասանիցն, և այլոցն ամենեցուն ։ Եւ էին Մարիամ Մագդաղենացի և Յովհաննա և Մարիամ Յակովբայ և այլք ընդ նոսա՝ որ պատմեցին զայս առաքելոցն. և երևեցան առաջի նոցա շաղփաղփութիւն բանքն նոցա՝ և չհաւատային նոցա ։ Բայց Պետրոս յարուցեալ ընթացաւ ի գերեզմանն, և հայեցեալ տեսանէ զկտաւսն լոկ՝ զի կային. և գնաց ընդ միտս զարմացեալ, թէ զինչ եղև ։ 12 ։

Քար. Խնդրեսցուք։ Կեցո։ Ձայնէ։ Աղ. Քում ամենազօր ։

---

ՅԵՐԵԿՈՅԻՆ

Մինչև ցկէտակէ Երրորդութեան՝ ով տէր Ես առ Աստուած, այլ յետ Հայր մերին՝ ՍԱՂՄՈՍ ձայնէ ։

ՍԱՂՄՈՍ ԿԴ. ձայնէ.

Քեզ վայել է օրհնութիւն Աստուած ի Սիոն ։ 353 ։

Սրբոյ Աւետարանին որ ըստ Մարկոսի ։ ԺԶ. 2 ։

Վասն յարութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ։

Եւ ընդ առաւօտս միաշաբաթուն գան ի գեր ։ 534 ։

Եւ յետ առաջնոյ աւետարանին՝ Քար. Եւ ևս խաղաղութեան ։ Քահ. Օրհնութիւն ։ Խոնարհեցո և Ապրեցո ։

ՀԱՄԲԱՐՁԻ ԱԿ

Առաքեցար ի Հօրէ Բանդ Աստուած ։ Ա. երեք տուն ։ 29 ։

Եւ յետ Համբարձոյն. Քար. Վասն խաղ ։ Աղ. Հայր գթած ։

ՍԱՂՄՈՍ ՃԽԷ. ձայնէ.

Գովեա Երուսաղէմ զՏէր, և օրհնեա զԱստուած ։ 542 ։

Սրբոյ Աւետարանին որ ըստ Ղուկասու ։ ԻԴ. 1 ։

Վասն յարութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ։

Բայց ի միաշաբաթուն վաղ քաջ ընդ առաւօտն ։ 543 ։

Քար. Խնդր ։ Կեցո ։ Ձայնէ ։ Աղ. Թագաւոր ։ Հայր մեր ։

---

# Ա · ԵՐԵՔՇԱԲԱԹԻ · ԲՁ

## Ի ԳԻՇԵՐԻ

ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԲՁ

Ի գերեզման քո կանխեցին կանայքն զիւղս ։ 32 ։

## ՑԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԱՁ

Պայծառացիր եկեղեցի հեթանոսաց յարութեամբ Քրիստոսի որ յարեաւն այսօր ի մեռելոց . պըսակեաց զքեզ խաչիւն իւրով ‖ Աստուած հարցըն մերոց ։ Այսօր ողբայ յինքեան ընդկործանումն իւր մահ . քանզի որ յԱդամայ մեռեալքն էին կենդանացան յարութեամբ Քրիստոսի Աստուծոյ ։ Այսօր ցընծան մանկունք առագաստի քանզի Քրիստոս յարուցեալ փարատեաց զսուգ եւ զտրտմութիւն . եւ լուսաւորեաց զաշխարհս Աստուած ։

Գ · Ըզ Տէր օրհնեցէք ‖ բարձր արարէք ընդ նա յաւիտեան ։ Այսօր է զոր արար Տէր եկայք ցընծասցուք . տօնեցէք ուրախութեամբ մինչեւ յանկիւնս սեղանոյն բարձր ։ Բարձրացուցէք ըզՏէր Աստուած մեր գոչէ մարգարէն . երկրպագեցէք պատուանդանի ոտից նորա . որ եբարձ ըզդատակնիք մահու ի մէջնընջ բարձր ։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԱՁ

Որ զաւետիս հոգւոյն ի հրեղէն ի հրեշտակէն ։ 193 ։

ՈՂՈՐՄԵԱ ԱՁ

Թիւնս իմ ‖ Ողորմեա ինձ Աստուած ։ Լըսելի արա ինձ Տէր ըզձայն յարութեան . աւետաւոր հրեշտակին . որ քարոզեացն ըզյարութիւն . ողոր ։ Որ յարեարդ ի մեռելոց Քրիստոս Աստուած . եւ մեզ կեանս շնորհեցեր պարգեւատու ամենեցուն . ողոր ։



Digitized by Google

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԱԶ

Ի՛ բարձանց || փառօք յարութեան քո Տէր։ Պատրանօք նախաստեղծին մերկացաք ի լուսոյն. եւ յարութեամբ Միածնիդ ըզգեցաք զանմահութիւն փառօք։ Խաբանօք փայտին ճաշակեցաք ըզմահ. եւ ի փայտէն կենաց նորոգեցաք ամենեքեան փառօք։

ՍԱՂՄՈՍ Ե

ԿՑ · Տէր որպէս զինու հաճութեամբ քով պսակեցեր զմեզ։

Փխ · Բանից իմոց ունկն դիր Տէր, եւ իմա առ զաղաղակ իմ։

Նայեաց ի ձայն աղօթից իմոց, Թագաւոր իմ եւ Աստուած իմ։

Ես զքեզ աղաչեմ Տէր, ընդ առաւօտս լուիցես ձայնի իմում. ընդ առաւօտս պատրաստ եղէց յանդիման լինել առ քեզ։

Ոչ թէ դու Աստուած կամիս զանօրէնութիւն, եւ ոչ բնակեն առ քեզ չարք, մի՛ անօրէնք բնակեսցեն առաջի աչաց քոց։

Ատեցեր զայնոսիկ որ գործեն զանօրէնութիւն, կորուսանես զամենեսեան որք խօսին սուտ։

Զայր արիւնահեղ եւ զնենգաւոր պիղծ առնես դու Տէր, այլ ես ըստ բազում ողորմութեան քում մտից ի տուն քո, եւ երկիր պագից ի տաճար սուրբ քո երկիւղիւ քո։

Տէր առաջնորդեա ինձ յարդարութեան քում. վասն թշնամեաց իմոց ուղիղ արա առաջի իմ զճանապարհս քո։

Զի ոչ գոյ ի բերանս նոցա ճշմարտութիւն, եւ սիրտք նոցա նանրեալք են։

Որպէս գերեզման բաց է կոկորդ նոցա, լեզուօք իւրեանց նենգաւորք եղեն։

Դատեա զնոսա Աստուած; զի անկցին ի խորհրդոց իւրեանց. ըստ բազում ամպարշտութեան նոցա մերժեա զնոսա՝ զի դառնացուցին զքեզ։

Ուրախ լիցին ամենեքեան որք յուսացեալ են ի քեզ, յաւիտեան ցնծասցեն, եւ բնակեսցես դու ի նոսա։

Պարծեսցին ի քեզ սիրելիք անուան քո, զի օրհնես-

Digitized by Google

ցես դու զարդարն. Տէր, որպէս զինու հաճութեամբ քով պսակեցեր զմեզ ։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու ։ ԻԴ. 13 ։

Յետ յարութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ։

Եւ ահա երկուք ի նոցանէ երթային ի նմին ։ 538 ։

Քարոզ. Խնդրեցաք ։ Կեցո ։ Աղօթ. Քում ամենազօր ։

---

Յ Ե Ր Ե Կ Ո Յ Ի Ն

ՍԱՂՄՈՍ Ե

ԿՑ. Տէր որպէս զինու հաճութեամբ քով պսակեցեր զմեզ ։

Փխ. Բանից իմոց ունկն դիր Տէր, և ի միտ ։ 546 ։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու ։ ԻԴ. 1 ։

Վասն յարութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ։

Բայց ի միաշաբաթուն վաղ քաջ ընդ առաւօտն ։ 543 ։

ՀԱՄԲԱՐՁԻ ԲՁ

Ի գերեզման քո կանխեցին կան ։ Ա. Երգ. տուն ։ 32 ։

ՍԱՂՄՈՍ Ի

Տէր ի զօրութեան քում ուրախ եղիցի թագաւորն, ի փրկութեան քում ցնծասցէ յոյժ ։

Զցանկութիւն սրտի նորա ետուր նմա, և զկամս շրթանց նորա ոչ արգելեր ի նմանէ ։

Ժաման արարեր զնա յօրհնութիւն քաղցրութեան քո, և եդիր ի գլուխ նորա պսակ ի քարէ պատուականէ ։

Կեանս խնդրեաց ի քէն, և ետուր նմա ընդ երկայն աւուրս, յաւիտեանս յաւիտենից ։

Մեծ են փառք նորա ի փրկութեան քում, զփառս և զմեծվայելչութիւն դիցես ի վերայ նորա ։

Տացես զնա յօրհնութիւն յաւիտեանս յաւիտենից, ուրախ արասցես զնա յուրախութիւն երեսաց քոց ։

Թագաւոր յուսացաւ ի Տէր, յողորմութենէ Բարձրելոյն նա մի' սասանեսցի ։

Գտցի ձեռն քո ի վերայ թշնամեաց քոց, և աջ քո գտցէ զամենայն ատելիս քո ։

Դիցես զնոսա որպէս հնոց ի հուր' ի ժամանակի երեսաց քոց ։

Տէր բարկութեամբ իւրով խռովեցուսցէ զնոսա, և հուր կերիցէ զնոսա ։

Digitized by Google

Պտուղ նոցա յերկրէ կորիցէ, և զաւակ նոցա յորդւոց ի մարդկանէ։

Խորհեցան ի քէն չարութեամբ, խորհեցան խորհուրդ զոր ոչ կարասցեն հաստատել։

Արասցես զնոսա հալածեալս, ի մնացուածս քո պատրաստեսցես զերեսս նոցա։

Բարձր լեր Տէր, ի զօրութեան քում. օրհնեսցուք և սաղմոս ասասցուք զօրութեան քում։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու։ Իդ. 13։

Յետ յարութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։

Եւ ահա երկուք ի նոցանէ երթային ի նմին։ 538։

Քարոզ. Խնդրեսցուք։ Կեցո։ Աղօթ. Թագաւոր։

---

# Ա. ԶՈՐԵՔՇԱԲԱԹԻ. ԲԿ

## Ի ԳԻՇԵՐԻ

### ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԲԿ

Քո յարութեանդ փառք վայելէ երկայնամիտ։ 36։

---

### ՅԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԱՁ

Օրհնեալ ես Տէր ‖ Աստուած հարցն մերոց։ Որ բարձրացար ի խաչին վասն ազգի մարդկան. առաքեա զքո զողորմութիւնդ ի պաշտօնեայս և յերկրպագուս Աստուած։ Որ զամենայնսն յանձն առեր վասըն մեր բարերար. խընայեա յարարածըս քո յարութեամբըդ քո Աստուած։

Գ. Ըզ Տէր օրհնեցէք ‖ բարձր արարէք ըզնա յաւիտեան։ Որ յանապական յաթոռ նըստի բարեբանեալն ի հրեշտակաց. կամաւոր չարչարանաց համբեր մահու խաչի մարմնացեալ Բանն. անդադար օրհնեցէք և գովեցէք բարձր։ Եւ իջեալ ի գերեզման անապական և սուրբ մարմնով. զի նորոգեսցէ ըզհընութիւն մեռելութեան մերոյ յարութեամբն իւրով. օրհնեցէք և գովեցէք բարձր։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԱՁ

Մեծացուցանեմք զքեզ որ ի Հօրէ բանդ և ան։ 195։

ՈՂՈՐՄԵԱ ԱՁ

Անճառելի Հօր էակից ի խաչ ելեր կամաւ Հօր ողորմեա։ Անմահութեանց տէր Քրիստոս. ի գերեզման ի ջեր որպէս մարդ ողորմեա։ Եւ յերրորդ աւուր յարեար. յոյս յարութեան ցուցար մեզ ողորմեա։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԱՁ

Ընդ կանայսն իւղաբերսն առ քեզ առաւօտեմք կենդանիդ յաւիտենից Քրիստոս ընկալ և ըզմեզ. փոխանակ խնկոցըն զօրհնաբանութիւնս։ փոխանակ սուրբ աւետաւոր զըւարթնոյն. գըթութիւն քո մեզ հանդիպեսցի յուսով գիտութեան. մխիթարել ըզհոգիս և լուսաւորել։ Ընդ նոսին աւետաւոր նորութեամբ քարոզեսցուք. ըզքո[illegible] միայն ըզսքանչելիսդ. որ յարեարդ ի մեռելոց ամենազօր թագաւոր անմահ։

ՍԱՂՄՈՍ ՃԽԷ

Գովեա Երուսաղէմ զՏէր, և օրհնեա զԱստուած։ 542։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու։ ԻԴ. 36։

Յետ յարութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։

Մինչ դեռ զայն խօսէին, ինքն իսկ Յիսուս եկաց ի մէջ նոցա՝ և ասէ ցնոսա. խաղաղութիւն ընդ ձեզ. ես եմ՝ մի՛ երկնչիք։ Եւ զահի հարեալ երկնչէին, և համարէին ոգի ինչ տեսանել։ Եւ ասէ ցնոսա. զի՞ խռովեալ էք, և ընդէ՞ր խորհուրդք ելանեն ի սիրտս ձեր. տեսէք զձեռս իմ և զոտս, զի ես նոյն եմ. շօշափեցէք զիս և տեսէք. զի ոգի մարմին և ոսկերս ոչ ունի, որպէս զիս տեսանէք զի ունիմ։ Եւ զայս ասացեալ՝ եցոյց նոցա զձեռսն և զոտս։ 40։

Քարոզ. Խնդրեսցուք։ Կեցո։ Աղօթք. Քում ամենազօր։

---

ՅԵՐԵԿՈՅԻՆ

ՍԱՂՄՈՍ ՃԽԷ

Գովեա Երուսաղէմ զՏէր, և օրհնեա զԱստուած։ 542։

Digitized by Google

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու ։ ԻԴ․ 13 ։

Ցետ յարութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ։

Եւ ահա երկուք ի նոցանէ երթային ի նմին ։ 538 ։

ՀԱՄԲԱՐՁԻ ԲԿ

Քո յարութեանդ փառք վայելէ ։ Ա․ Եշեք պան ։ 36 ։

ՍԱՂՄՈՍ ԿԴ

Փխ․ Քեզ վայելէ օրհնութիւն Աստուած ի Սիոն ։ 353 ։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու ։ ԻԴ․ 36 ։

Ցետ յարութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ։

Մինչ դեռ զայն խօսէին, ինքն իսկ Յիսուս եկաց ։ 549 ։

Քարոզ․ Խնդրեսցուք ։ Կեցո ։ Աղօթ․ Թագաւոր ։

---

## Ա․ ՀԻՆԳՇԱԲԱԹԻ․ ԳՁ

### Ի ԳԻՇԵՐԻ

ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԳՁ

Իւղաբեր և սուրբ կանայքն ողբալով փութա ։ 38 ։

---

### ՅԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԱՁ

Ընդ երկնային մանկունս օրհնաբանեմ․ բարեբանեմք ըզքեզ Քրիստոս || Աստուած հարցըն մերոց ։ Որ իջեր ի յերկնից խոնարհութեամբ․ եւ խաչի համբերեալ փրկեցեր ըզմեզ․ Աստուած ։ Թաղեցար ի նոր ի գերեզմանի․ եւ յարուցեալ նորոգեցեր ըզտիեզերս Աստուած ։

Գ․ ԸզՏէր օրհնեցէք || բարձր արարէք ըզնա յաւիտեան ։ Զթագաւորն անմահ եւ զԱստուածըն յաւիտենից․ անմեկնելին ժողովուրդք բարեբանեցէք բարձր ։ Որ մահուամբն ըզմահ խափանեաց եւ յարութեամբն իւրով զյարութիւն մեզ պարգեւեաց բարձր ։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԱՁ

Որ ըզհրեշտակին ըզձայնըն լըւեալ հիացեալ բերկրեցար․ || բարեխօսեա․ վասըն մեր․ մեզ օրհ-

Digitized by Google

նորանեմք զօրհնեալդ ի կանայս։ Որ ընդհուպն Աստուած յորովայնի քում կրեցեր անկիզելի մարմնի. բարեխօսեա։ Որ զանշօշափելին յէից ի գիրկս քո բարձեալ դիեցուցեր կաթընստեանց. բարեխօսեա։

ՈՂՈՐՄԵԱ ԱՁ

Որ խոնարհեցար ի յերկնից եւ իջեր ի յերկիր. միածին Որդի եւ Բանդ Աստուած ‖ ողորմեա բանաւոր հօտի։ Որ կանգնեցեր ըզխաչ քո ի մէջ երկրի. եւ ելեալ բարձրացար փրկեցեր ըզտիեզերս. ողորմ։ Թաղեցար ի նոր ի գերեզմանի եւ յարուցեալ յերրորդ աւուր ի յերկինս համբարձար. ողորմ։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԱՁ

Որ անճառ էութեամբ Հօրդ ես փառակից. չարչարիլ մարմնով յանձն առեր վասն մեր. ‖ մշտընջենաւոր օրհնութեամբ ի հրեշտակաց օրհնեալ ես Տէր։ Որ էակդ ես ընդ Հօր եւ սուրբ Հոգւոյն. խաչեցար և թաղեցար կամաւ Հօր վասն մեր. մշտընջենաւոր։ Որ միւսանգամ գալոց ես հայրենի փառօք. շնորհելով աստուածապէս յարութիւն տիեզերաց. յամենայն արարածոց յաւիտենից օրհնեալ ես Տէր։

ՍԱՂՄՈՍ ՂԸ

Կ8. Բարձր արարէք զՏէր Աստուած մեր. երկիր պագէք պատուանդանի ոտից նորա, զի սուրբ է։

Փխ. Տէր թագաւորեաց, բարկացան ժողովուրդք. որ նստիս ի քրովբէս, սասանեցաւ երկիր։

Տէր ի Սիովն մեծ է, և բարձր է ի վերայ ամենայն ժողովրդոց։

Խոստովան եղիցուք անուան քում մեծի, զի ահաւոր և սուրբ է, և պատիւ թագաւորի զիրաւունս սիրէ։

Դու պատրաստեցեր զուղղութիւն, զիրաւունս և զարդարութիւն Յակովբայ դու արարեր։

Բարձր արարէք զՏէր Աստուած մեր, երկիր պագէք պատուանդանի ոտից նորա, զի սուրբ է։

Digitized by Google

Մովսէս և Ահարոն երիցունք նորա, Սամուէլ ընդ այնոսիկ որ կարդան զանուն նորա։

Կարդային առ Տէր և նա լսէր նոցա, և ի սիւն ամպոյ խօսէր ընդ նոսա։

Պահէին զվկայութիւն նորա և զհրամանս զոր ետ նոցա։

Տէր Աստուած մեր, դու լսէիր նոցա. Աստուած, դու քաւիչ լինէիր, վրէժխնդիր ի վերայ ամենայն գործոց նոցա։

/ Բարձր արարէք զՏէր Աստուած մեր, երկիր պագէք ի լեառն սուրբ նորա, զի սուրբ է Տէր Աստուած մեր։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի։ Ե. 1։

Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի

Եւ տեսեալ զժողովուրդսն՝ ել ի լեառն. և իբրև նստաւ անդ՝ մատեան առ նա աշակերտքն նորա. և բացեալ զբերան իւր ուսուցանէր զնոսա, և ասէր. Երանի աղքատաց հոգւով, զի նոցա է արքայութիւն երկնից։ Երանի սգաւորաց, զի նոքա մխիթարեսցին։ Երանի հեզոց, զի նոքա ժառանգեսցեն զերկիր։ Երանի որ քաղցեալ և ծարաւի իցեն արդարութեան, զի նոքա յագեսցին։ Երանի ողորմածաց, զի նոքա ողորմութիւն գտցեն։ Երանի այնոցիկ՝ որ սուրբ են սրտիւք, զի նոքա զԱստուած տեսցեն։ Երանի խաղաղարարաց, զի նոքա որդիք Աստուծոյ կոչեսցին։ Երանի որ հալածեալ իցեն վասն արդարութեան, զի նոցա է արքայութիւն երկնից։ Երանի է ձեզ՝ յորժամ նախատիցեն զձեզ և հալածեսցեն, և ասիցեն զամենայն բան չար զձէնջ սուտ՝ վասն իմ. ցնծացէք և ուրախ լերուք, զի վարձք ձեր բազում են յերկինս. զի այսպէս հալածեցին զմարգարէսն որ յառաջ քան զձեզ էին։ 12։

Քարոզ. Խնդրեսցուք։ Կեցո։ Աղօթ. Քում ամենազօր։

---

ՅԵՐԵԿՈՅԻՆ

ՍԱՂՄՈՍ ՂԸ

Կ8. Բարձր արարէք զՏէր Աստուած մեր։ 551։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու։ ԻԴ. 36։

Յետ յարութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։

Մինչ դեռ զայն խօսէին, ինքն իսկ Յիսուս եկաց։ 549։

ՀԱՄԲԱՐՁԻ ԳՁ

Իւղաբեր և սուրբ կանայքն ողբալ։ Ա. Երեք տուն։ 38։

ՍԱՂՄՈՍ ԺԴ

Տէր ո՞վ կացցէ ի խորանի քում, կամ ո՞վ բնակեսցէ ի լեառն սուրբ քո։

Որ գնայ անբիծ գործէ զարդարութիւն, խօսի զճըշմարտութիւն ի սրտի իւրում։

Որ ոչ նենգաւորեաց լեզուաւ իւրով, և չար ընկերի իւրում նա ոչ արար։

Նախատինս ի մերձաւորաց նա ոչ առնու, արհամարհեալ է առաջի նորա չարագործ։

Զերկիւղածս Տեառն փառաւոր առնէ, երդնու ընկերի իւրում և ոչ ստէ։

Զարծաթ իւր ի վարձու ոչ տայ, կաշառ ի վերայ իւրաւանց ոչ առնու. որ զայս արասցէ, նա մի՛ սասանեսցի յաւիտեան։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի։ Ե. 1։

Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։

Եւ տեսեալ զժողովուրդսն՝ ել ի լեառն. և իբրև։ 552։

Քարոզ. Խնդրեսցուք։ Կեցո։ Աղօթ. Թագաւոր։

---

## Ա. ՈՒՐԲԱԹ. ԳԿ

### Ի ԳԻՇԵՐԻ

ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԳԿ

Յարեաւ Տէրն ի գերեզմանէն։ Ընդ յառնել։ 42։

---

### ՅԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԱԶ

Լոյս որ ի հրեղէն յաթոռ բարձրացեալ հանգչիս Երեքսրբեան ձայնիւ ի դասուց հոգեղինաց օրհնաբանիս. ‖ Աստուած հարցըն մերոց։ Պատկերակից եղեր հողեղէն բնութեանըս. մարդասիրապէս գթացար կուսական ծնընդեամբդ. ազատեցեր զմեզ Աստուած։ Քանզի միոյն յանցանօք ամենեքեան մեռաք. այլ ի խաչելըն քո Քրիստոս ամենեքեան նորոգեցաք ի փառս. Աստուած։

Digitized by Google

Գ. Ըզտէր || օրհնեցէք և բարձր արարէք ըզնա յաւիտեան։ Որ բազմեալ հանգչիս յանարուեստ ի յաթոռ ըզմահ խաչի ի յանձն էառ վասն ազգի մարդկան. օրհնեցէք։ Եւ ի կողահոս արեան աղբերէն. նորոգեցան արարածք եւ անմահացան. օրհնեցէք։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԱՁ

Զքեզ երևեալ դուռն առ Եզեկիէլիւ մարգարէիւ։ 196։

ՈՂՈՐՄԵԱ ԱՁ

Աննըսկիզբըն Բանդ անբաժանելի ծընընդ Հօր. որ վասըն մեր մարմնացար ի կուսէն. ըզմահ խաչի ի յանձն առեր և թաղեցար յերկրի։ Այսօր զանմահ և զանապական մարմինըն Տեառն. կանայքն որպէս մեռեալ խընկել խընդրէին. այլ հրեշտակին ձայնեալ ասէր. զի խընդրէք ըզկենդանին ընդ մեռեալս։ Նա ըզթըշնամին կապեաց եւ զդըժոխս աւերեաց. յարուցեալ ի մեռելոց Քրիստոս Աստուած. պարգեւէ ազգի մարդկան զմեծ զողորմութիւն։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԱՁ

Սոսկալի տեսիլ հրեշտակին. ի փառաւոր քո գերեզմանին. ըզպահապանսըն զարհուրեցոյց։ Իմանալին մարմնական ձայնիւ. բարբառէր առ սուրբ կանայսն փարատեցոյց զսուգ եւ զտըրտմութիւն։ Ով կանայք ըզգաստք աստուածասէրք. զամենեցուն զյոյսն եւ զյարութիւն. ընդ մեռեալս զի խընդրէք։

Փայլականաձեւ հրեշտակն իջեալ յերկնից զարհուրեցոյց ըզպահապանսն. եւ սուրբ զկանայսն խընդութեամբ լցոյց։ Աստուածասէր կանայք ցընծացէք այսօր յարութեամբ Քրիստոսի ի մեռելոց. եւ լոյս մեծ աշխարհի ծագեաց։ Աւետիս լըւեալ ի սուրբ հրեշտակէն. ընթանային առ աշակերտսըն պատմելով նոցա զյարութիւնըն Տեառն։

Digitized by Google

ՍԱՂՄՈՍ ՂԷ

ԿՑ. Տեսին ամենայն ծագք երկրի զփրկութիւն Աստուծոյ մերոյ:

ՓԽ. Օրհնեցէք զՏէր յօրհնութիւն նոր, գի: 315:

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Յովհաննու: ԻԱ. 1:

Յետ յարութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի:

Յետ այսորիկ դարձեալ յայտնեաց զանձն իւր Յիսուս աշակերտացն իւրոց՝ առ ծովեզերբն Տիբերեայ, և յայտնեաց այսպէս: Էին ի միասին Սիմովն Պետրոս, և Թովմաս՝ անուանեալն երկուորեակ, և Նաթանայէլ որ ի Կանայ Գալիլեացւոց, և որդիքն Զեբեթեայ, և այլք յաշակերտաց անտի երկու: Ասէ ցնոսա Սիմովն Պետրոս. երթամ ձուկն որսալ: Ասեն ցնա. գամք և մեք ընդ քեզ: Գնացին և մտին ի նաւ, և յայնմ գիշերի կալան և ոչ ինչ: Իբրև այգ եղև կայր Յիսուս յեզր ծովուն, բայց ոչ ծանեան աշակերտքն թէ Յիսուս իցէ: Ասէ ցնոսա Յիսուս. մանկունք, միթէ ունի՞ք ինչ ուտելոյ: Պատասխանի ետուն և ասեն ցնա. ոչ: Ասէ ցնոսա. արկէք յաջակողմն նաւին զուռկանդ, և գտանիցէք: Արկին՝ և ոչ կարէին ձգել ի բազմութենէ անտի ձկանցն: Ասէ աշակերտն այն զոր սիրէրն Յիսուս՝ ցՊետրոս. Տէր է այն: Սիմովն Պետրոս իբրև լուաւ թէ Տէր է, արկաւ զիւրև զափածանելին՝ քանզի մերկ էր, և ընկէց զինքն ի ծովն. և այլ աշակերտքն նաւաւն իսկ գային, քանզի չէին հեռի ի ցամաքէն, այլ իբրև երկերիւր կանգնաւ, քարշէին զգործին հանդերձ ձկամբն: Իբրև ելին ի ցամաք, տեսանեն կրակետղ կայծականց, և ձուկն մի ի վերայ, և հաց: Ասէ ցնոսա Յիսուս. բերէք ի ձկանց այտի՝ զոր դուքդ կալարուք այժմիկ: Ելանէ Սիմովն Պետրոս, և ձգէր զգործին ի ցամաք՝ լի մեծամեծ ձըկամբք, հարիւր յիսուն և երիւք. և այնչափ ինչ կայր, և ոչ պատառեցաւ գործին: Ասէ ցնոսա Յիսուս. եկայք ճաշեցէք: Եւ ոչ ոք յաշակերտացն իշխէր հարցանել՝ թէ դու ո՞վ ես, զի գիտէին թէ Տէրն է: Գայ Յիսուս և առնու զհացն՝ և տայ նոցա, նոյնպէս և զձուկնն: Զայս երիցս անգամ երևեցաւ Յիսուս աշակերտացն՝ յարուցեալ ի մեռելոց: 14:

Քարոզ. Խնդրեսցուք: Կեցո: Աղօթք. Քում ամենազօր:

## ՅԵՐԵԿՈՅԻՆ

### ՍԱՂՄՈՍ ՂԷ

ԿՑ. Տեսին ամենայն։ Փխ. Օրհնեցէք զՏէր։ 315։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի։ Ե. 1։

Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի

Եւ տեսեալ զժողովուրդսն՝ ել ի լեառն. և իբրև։ 552։

### ՀԱՄԲԱՐՁԻ ԳԿ

Յարեաւ Տէրն ի գերեզմանէն։ Ա. Եղէ+ տառն։ 42։

### ՍԱՂՄՈՍ ՂԲ

Տէր թագաւորեաց՝ վայելչութիւն զգեցաւ, զգեցաւ Տէր զօրութիւն՝ ընդ մէջ իւր ածաւ։

Հաստատեաց զաշխարհ զի մի՛ սասանեսցի. պատրաստ է աթոռ քո ի սկզբանէ, յաւիտենից դու ես։

Ամբարձան գետք Տէր, և ամբարձին գետք զձայնս իւրեանց. յարիցեն գետք ի գնացս իւրեանց։

Ի ձայնէ ջուրց բազմաց, սքանչելի եղեն զբօսանք ծովու։

Սքանչելի ես դու Տէր ի բարձունս, վկայութեանց քոց մեք յոյժ հաւատացաք։

Տան քում վայելէ սրբութիւն Տէր, ընդ երկայն աւուրս։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Յովհաննու։ ԻԱ. 1։

Յետ յարութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։

Յետ այսորիկ դարձեալ յայտնեաց զանձն իւր։ 555։

Քարոզ. Խնդրեսցուք։ Կեցո։ Աղօթ+. Թագաւոր։

---

# Ա. ՇԱԲԱԹ. ԴՋ

Տօն է գլխատման Յովհաննու Մկրտչին։

## Ի ԴԻՇԵՐԻ

### ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԴՋ

Փառաբանակից Հօր Որդի որ վասն մեր խաչե։ 44։

---

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

### ՀԱՐՑ ԱՋ

Նախայաւիտեան Բանին պատմող առաքեցար աշխարհի սուրբ Յովհաննէս Մկրտիչ. || աղաչեա զԱստու-

ւած հարցըն մերոց։ Որ ըզհրեշտակացն անտեսանե-
լին. յարգանդի կուսին տեսեալ քո և երկրպագեալ.
աղաչեմ։ Որք հաւատով ըզյիշատակս քո տօնեմք. եւ
անդադար ձայնիւ ըզքեզ ունիմք բարեխօս. աղաչեմ։

Գ. ԸզՏէր ‖ Գովեցէք ըզՏէր Քրիստոս միշտ եւ
յաւիտեան։ Զմեծին ի ծնունդըս կանանց զկարապե-
տին եւ զՄըկրտչին Յովհաննու. զառաքինութեան ըզ-
հանդէս. տօնելով այսօր ի ձայն հըռչման. գովեցէք։
Խայտացելոյն յորովայնի հոգւով ի ծընընդեանն Քրիստո-
սի. որ ի փըրկութիւն աշխարհի յայտնեցաւ Աստըւած
Բանն. գովեցէք։ Ցանապատի բարբառոյ ձայնի ըզՄըր-
կըրտչին Յովհաննու զյաղթական մարտի ըզգըլխատմա-
նըն կատարեմք այսօր ըզյիշատակ. գովեցէք։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԱԶ

Որ զԲանն Աստուած բաւական եղեր ընդունել։ 197։

ՈՂՈՐՄԵԱ ԱԶ

Կարապետ արքայութեանն երկնից սուրբ Յովհաննէս
Մըկրտիչ. որ եղեւ աշխարհի քարոզ փրկութեան
յաւիտենից. ‖ Աղօթիւք սորա Տէր լուր մեզ եւ ո-
ղորմեա։ Որ առաւել քան ըզմարգարէս մեծ ի ծնըն-
դըս կանանց. որ ըզքեզ մեզ յայտնեաց Աստուած և
մարդ յերկրի երեւեալ. աղօթիւք։ Զայն բարբառոյ յա-
նապատի և կատարիչ խորհըրդոյ. գըլխատեալ այսօր ի
Հերովդիայ վերափոխեցաւ ի դաս անմարմնոցն. ա-
ղօթիւք։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԱԶ

Երկնաքաղաքացին Յովհաննէս մեծ ի ծնընդըս կա-
նանց քարոզէր յանապատի ազգ արարոց բարբառովն.
ըզծագումըն լուսոյ արեգականն արդարութեան։ Ճըշ-
մարիտ մարգարէ և ձեռնադրող Որդւոյն Աստուծոյ. յա-
ռաջընթաց կարապետ և պատմող աստուածային օրի-
նացն. հորդէր ճանապարհս Թագաւորին յաւիտենից։

Digitized by Google

Զաւակ նորա յաւիտեան կացցէ, և աթոռ նորա՝ որպէս արեգակն առաջի իմ, որպէս լուսին՝ զի հաստատեալ է յաւիտեան վկայ հաւատարիմ յերկինս ։

Իսկ արդ դու մերժեցեր և անարգեցեր և ընդ վայր հարեր զօծեալ քո ։

Դարձուցեր զուխտ ի ծառայէ քումմէ, պղծեցեր յերկրի զսրբութիւն նորա ։

Քակեցեր զամենայն պարիսպս նորա, և եդիր զամուրս նորա ի դողումն ։

Ցափշտակեցին զնա անցաւորք ճանապարհի, եղև նա նախատ դրացեաց իւրոց ։

Բարձր արարեր զաջ նեղչաց նորա, ուրախ արարեր զամենայն թշնամիս նորա ։

Դարձուցեր զօգնութիւն ի սրոյ նորա, և ոչ ընկալար զնա ի պատերազմի ։

Անարգեցեր զսրբութիւն նորա, և զաթոռ նորա յերկիր կործանեցեր ։

Նուազ արարեր զաւուրս ժամանակաց նորա, և հեղեր զնովաւ զամօթ ։

Մինչև յե՞րբ դարձուցանես զերեսս քո ի սպառ, բորբոքեսցի որպէս հուր բարկութիւն քո ։

Իսկ արդ յիշեա և տես թէ ո՛վ է իմ հանգիստ. մի թէ ի զո՞ւր ինչ ստեղծեր զամենայն որդիս մարդկան ։

Ո՞վ է մարդ որ կեցցէ և ոչ տեսցէ զմահ, կամ փրկեսցէ զանձն իւր ի ձեռաց դժոխոց ։

Ո՞ւր են ողորմութիւնք քո Տէր առաջինք, զոր երդուար Դաւթի ճշմարտութեամբ քով ։

Յիշեա զնախատինս ծառայի քո, զոր ընկալայ ի ծոց իմ յազգաց բազմաց ։

Զոր նախատեցին թշնամիք քո Տէր, նախատեցին փոխանակ օծելոյ քո ։

Օրհնեալ Տէր Աստուած յաւիտեանս յաւիտենից. եղիցի եղիցի ։

Ալէլուիա. ալէլուիա ։

ԸՆթերցուած յԱռակաց : Ը. 4:

Ձեզ աղաչեմ, ո՛վ մարդիկ, և բաշխեմ զբարբառ իմ որդւոց մարդկան ։ Իմացարուք անմեղք զխորագիտութիւն. և անխրատք դիք ի սիրտ ձեր. ունկն դիք ինձ, զի զպարկեշտս բարբառիմ, և բղխեմ ի շրթանց իմոց

Digitized by Google

զուղղութիւնս ։ Զի զճշմարտութիւն խոկասցէ կոկորդ իմ, և պիղծ են առաջի իմ շրթունք սուտք ։ Արդարութեամբ են ամենայն պատգամք բերանոյ իմոյ, և ոչ ինչ գոյ ի նոսա ծռութիւն և ոչ թիւրութիւն ։ Ամենայն ինչ ուղիղ է իմաստնոց, և յարմարեալ այնոցիկ ոյք գտանեն զգիտութիւն ։ Ընկալարուք զխրատ՝ և մի՛ զարծաթ. և զգիտութիւն քան զոսկի ընտիր ։ Լաւ է իմաստութիւն քան զականս պատուականս, և ամենայն ինչ պատուական չարժէ զնա ։ 11 ։

Ընթերցուած յԵսայեայ մարգարէէ: Խ. 3:

Ձայն բարբառոյ յանապատի. պատրաստ արարէք զճանապարհս Տեառն, և ուղիղ արարէք զշաւիղս Աստուծոյ մերոյ ։ Ամենայն ձորք լցցին, և ամենայն լերինք և բլուրք խոնարհեսցին. և եղիցին ամենայն դժուարինք ի դիւրինս, և առապարքն ի դաշտս ։ Եւ երևեսցին փառքն Տեառն. և տեսցէ ամենայն մարմին զփրկութիւն Աստուծոյ. զի Տէր խօսեցաւ ։ Ձայն որ ասէ. գոչեա. և ասեմ. զի՞նչ գոչեցից. գոգջիր, ամենայն մարմին խոտ է, և ամենայն փառք մարդոյ իբրև զծաղիկ խոտոյ ։ Ցամաքեցաւ խոտն, և թօթափեցաւ ծաղիկ նորա, զի ոգի Տեառն շնչեաց ի նա, արդարև խոտ է ժողովուրդս այս. ցամաքեցաւ խոտն, և թօթափեցաւ ծաղիկն. և բան Տեառն մնայ յաւիտեան ։ 8 ։

Ընթերցուած ի Մաղաքեայ մարգարէէ: Դ. 4:

Եւ ահա ես առաքեմ առ ձեզ զԵղիա թեզբացի, մինչ չև եկեալ իցէ օր Տեառն մեծ և երևելի. որ պատրաստեսցէ զսիրտ հօր առ որդի, և զսիրտ առն առ ընկեր իւր, գուցէ եկեալ հարկանիցեմ զերկիր միանգամայն ։ Յիշեցէք զօրէնան Մովսիսի ծառայի իմոյ, որպէս պատուիրեցի նմա ի Քորէբ, զամենայն զհրամանս և զիրաւունս ։ 6 ։

Ընթերցուած ի Գործոց առաքելոց: ԺԳ. 25:

Եւ իբրև լնոյր Յովհաննէս զընթացսն, ասէր. զո՞ ոք կարծէք զինէն թէ իցեմ. չեմ ես այն. այլ ահա գայ զկնի իմ որում չեմ արժանի զկօշիկս ոտիցն լուծանել ։ Արք եղբարք, որդիք աբրահամեան տոհմին, և որ ի ձեզ երկիւղածք իցեն յԱստուծոյ, ձեզ բանս այս փրկութեան



Digitized by Google

առաքեցաւ: Բայց որ բնակեալ էին յԵրուսաղէմ, և իշխանք նոցա՝ անծանօթ եղեն ի նմանէ, և ըստ բարբառոյ մարգարէիցն՝ որ զամենայն շաբաթս ընթեռնուին՝ դատեալ կատարեցին. և ոչ մի ինչ պատճառս մահու գտեալ՝ խնդրեցին ի Պիղատոսէ սպանանել զնա: Եւ իբրև կատարեցին զամենայն՝ որ վասն նորա գրեալ էր, իջուցեալ ի փայտէն՝ եդին ի գերեզմանի: Այլ Աստուած յարոյց զնա ի մեռելոց, որ երևեցաւ աւուրս բազումս այնոցիկ, որ ելեալ էին ընդ նմա ի Գալիլեէ յԵրուսաղէմ, որք և արդ իսկ վկայք են նորա առ ժողովուրդն: Եւ մեք ձեզ աւետարանեմք զխոստումն որ առ հարսն եղեալ էր. զի զնոյն Աստուած կատարեաց առ մեզ որդիս նոցա՝ յարուցեալ զՅիսուս. որպէս և ի սաղմոսին գրեալ է՝ յերկրորդում. որդի իմ ես դու՝ ես այսօր ծնայ զքեզ: 33:

Զայնի— Ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա:

Կարապետն Յովհաննէս զարհուրեալ, ի յորովայնէ յորովայն երկրպագեալ, սպասաւոր եղև Բանին Աստուծոյ. և լուեալ զահաւոր զձայնն, աղաղակէր ասելով. ահա գառն Աստուծոյ որ բառնայ զմեղս աշխարհի:

## Ալէլուիա, Օրթի

### Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մարկոսի: Զ. 14:

### Վասն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի:

Եւ լուաւ արքայ Հերովդէս, քանզի յայտնի եղև անուն նորա. և ասէր, թէ Յովհաննէս Մկրտիչ յարեաւ ի մեռելոց, և վասն այնորիկ զօրութիւնք լինին նովաւ: Այլք ասէին՝ թէ Եղիա է, իսկ այլքն՝ թէ մարգարէ է, կամ թէ իբրև զմի ի մարգարէից: Իբրև լուաւ Հերովդէս, ասէ. զորոյ ես զգլուխն հատի զՅովհաննու՝ սա է, նա յարեաւ ի մեռելոց: Զի ինքն Հերովդէս առաքեաց կալաւ զՅովհաննէս, և կապեաց զնա և եդ ի բանտի, վասն Հերովդիայ կնոջ Փիլիպպոսի եղբօր նորա, զի նա՝ կին արար զնա: Քանզի ասէր Յովհաննէս ցՀերովդէս՝ թէ ոչ է օրէն քեզ ունել զկին եղբօր քո: Եւ Հերովդիա ոխացեալ էր ընդ նմա՝ և կամէր սպանանել զնա, և ոչ կարէր: Զի Հերովդէս երկնչէր ի Յովհաննէ. քանզի գիտէր զնա այր արդար և սուրբ, և պահէր զնա.

Digitized by Google

և լուեալ ի Նմանէ բազում ինչ՝ առնէր, և քաղցրութեամբ լսէր Նմա։ Իբրև օր մի լինէր պարապոյ, յորժամ ընթրիս տայր Հերովդէս՝ յաւուր ծննդոց իւրոց՝ Նախարարաց իւրոց և հազարապետաց և մեծամեծաց Գալիլեացւոց, և ի մտանել դստերն Հերովդիայ և ի կաքաւել, հաճոյ եղև Հերովդի և բազմականացն։ Ասէ թագաւորն ցաղջիկն. խնդրեա յինէն զոր ինչ կամիս, և տաց քեզ։ Եւ երդուաւ Նմա բազում անգամ, թէ զոր ինչ և խնդրեսցես դու յինէն, տաց քեզ՝ մինչև ցկէս թագաւորութեան իմոյ։ Նա ելեալ ասէ ցմայր իւր. զի՞նչ խնդրեցից։ Եւ Նա ասէ. զգլուխն Յովհաննու Մկրտչի։ Եւ մտեալ անդրէն փութանակի առ թագաւորն՝ ասէ. կամիմ՝ զի այժմ տացես ինձ վաղվաղակի ի վերայ սկտեղ զգլուխն Յովհաննու Մկրտչի։ Եւ տրտմեցաւ յոյժ թագաւորն, այլ վասն երդմանցն և կոչնականացն՝ ոչ կամեցաւ անարգել զնա. և առաքեաց վաղվաղակի թագաւորն՝ դահիճ, և հրամայեաց բերել զգլուխն Նորա։ Եւ չոգաւ գլխատեաց զնա ի բանտին, և եբեր զգլուխն Նորա սկտեղբ՝ և ետ ցաղջիկն, և աղջիկն տարաւ ետ մօր իւրում։ Իբրև լուան աշակերտքն Նորա, եկին բարձին զմարմինն և եդին ի գերեզմանի։ 29։

Քարոզ. Խնդրեսցուք. Կեցո։ Աղօթ. Քում ամենազօր։

---

## Յ Ե Ր Ե Կ Ո Յ Ի Ն

### ՍԱՂՄՈՍ ԿԶ

Աստուած ողորմեա մեզ և օրհնեա զմեզ, երևեցո զերեսս քո ի մեզ և ողորմեա մեզ։

Ճանաչել յերկրի զճանապարհս քո, յազինս ամենայն զփրկութիւնս քո։

Խոստովան եղիցին առ քեզ ժողովուրդք Աստուած, խոստովան եղիցին առ քեզ ժողովուրդք ամենայն։

Ուրախ եղիցին և ցնծասցեն ազինք, զի դու դատիս զժողովուրդս յուղղութիւն, և ազգաց երկրի դու առաջնորդես։

Խոստովան եղիցին առ քեզ ժողովուրդք Աստուած, գոհասցին զքէն ժողովուրդք ամենայն։

Երկիր ետ զպտուղ իւր, և օրհնեաց զմեզ Աստուած Աստուած մեր։

Աստուած մեր օրհնեսցէ զմեզ, և ի Նմանէ երկիցեն ամենայն ազգք երկրի։

Digitized by Google

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Յովհաննու ։ ԻԱ. 1 ։

Յետ յարութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ։

Յետ այսորիկ դարձեալ յայտնեաց զանձն իւր ։ 555 ։

Լոյս զուարթ ։

ՄԵՍԵԴԻ Գաղափէան ։

Օրհնեալ որ գաս յանուն Տեառն, օրհնեալ որ գալոց ես ։

Տէր Աստուած մեր երեւեցաւ մեզ. արարէք տօնս ուրախութեան կանխաւ մինչեւ յանկիւնս սեղանոյ ։

ՀԱՄԲԱՐՁԻ ԱՁ

Որ վերօրհնիս յաթոռս քերովբէից ։ Միջ տան ։ 310 ։

Քարոզ. Վասն խաղաղութեան ։ Աղօթ. Հայր գթած ։

ՍԱՂՄՈՍ Ձ

Ցնծացէք առ Աստուած օգնական է մեր աղա ։ 457 ։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Յովհաննու ։ ԻԱ. 15 ։

Յետ յարութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ։

Եւ իբրեւ ճաշեցին, ասէ ցՍիմովն Պետրոս Յիսուս. Սիմովն Յովնանու, սիրե՞ս զիս առաւել քան զդոսա ։ Ասէ ցնա. այո Տէր, եւ դու գիտես զի սիրեմ զքեզ ։ Ասէ ցնա. արածեա զգառինս իմ ։ Դարձեալ ասէ ցնա. Սիմովն Յովնանու, սիրե՞ս զիս ։ Ասէ ցնա. այո Տէր, եւ դու գիտես զի սիրեմ զքեզ ։ Ասէ ցնա. արածեա զոչխարս իմ ։ Ասէ ցնա երիցս անգամ. Սիմովն Յովնանու սիրե՞ս զիս ։ Տրտմեցաւ Պետրոս՝ զի ասացն ցնա երիցս՝ թէ սիրե՞ս զիս. եւ ասէ ցնա. Տէր, դու զամենայն գիտես, եւ դու իսկ զամենայն ճանաչես, եւ եթէ սիրեմ զքեզ ։ Ասէ ցնա Յիսուս. արածեա զոչխարս իմ ։ Ամէն ամէն ասեմ քեզ, զի մինչ մանուկն էիր՝ անձամբ անձին գօտի ածէիր, եւ երթայիր յո եւ կամէիր. եւ յորժամ ծերասցիս, ձեռս ի վեր կալցես՝ եւ այլք ածցեն քեզ գօտի, եւ տարցին ուր ոչն կամիցիս ։ Զայս ասաց՝ նշանակել թէ որով մահու փառաւոր առնիցէ զԱստուած. եւ զայս իբրեւ ասաց՝ ասէ ցնա. եկ զկնի իմ ։ Դարձաւ Պետրոս՝ եւ տեսանէ զաշակերտն զոր սիրէր Յիսուս՝ զի երթայր զկնի, որ եւ անկաւ զլանջօքն նորա եւ ասէ. Տէր, ո՞վ է որ մատնելոցն է զքեզ ։ Զնա տեսեալ Պետրոսի՝ ասէ ցՅիսուս.

Digitized by Google

Տէր, իսկ սա զի՞ ։ Ասէ ցնա Յիսուս. եթէ կամիմ զի կացցէ դա՛ մինչև ես գամ, քեզ զի՞ փոյթ է, դու եկ զկնի իմ ։ Եւ ել բանս այս յեղբարս, և համարեցան թէ աշակերտն այն ոչ մեռանիցի. և ոչ ասաց նմա Յիսուս, եթէ ոչ մեռանիցի. այլ թէ կամիմ ես թէ կացցէ դա մինչև ես գամ ։ Այս աշակերտ է՝ որ վկայէ վասն այսոցիկ, որ և գրեացն իսկ զայսոսիկ. և գիտեմք եթէ ճշմարիտ է վկայութիւն նորա ։ Բայց է և այլ ինչ բազում զոր արար Յիսուս, զոր եթէ գրեալ էր մի ըստ միոջէ, կարծեմ թէ և ոչ աշխարհս բաւական էր տանել զգիրսն՝ որ թէ գրեալ էին ։ 25 ։

Քարոզ. Խնդրեսցուք ։ Կեցո ։ Աղօթ. Թագաւոր ։

# ՆՈՐ ԿԻՐԱԿԷ. ԴԿ



## Ի ԳԻՇԵՐԻ

ԿԱՆՈՆԱԳԼ. ԴԿ. ՍԱՂ. ՃԽԵ. Օրհնեա անձն իմ ։ է Բէ.

Զկնի Համբարձման Շարական սոսա ։

### ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԴԿ

Նորոգեալ կըղզիք առ Աստուած. եկեղեցիք հեթանոսաց. ի գլխոց լերանց գոչմամբ ձայնի տուք ըզփառս Աստուծոյ. և պատմեցէք զքաջութիւն յարուցելոյն ի մեռելոց ։ Երկնաւոր փեսային հարսնացեալ եկեղեցի Աստուծոյ. զարդարեալ ի ներքոյ ի հանդերձս յոսկեհուրսն պըսակեալ. քանզի ահա գայ առ քեզ || Քրիստոս փառաց թագաւորն ։ Բախացեալ որդիք Սիոնի ի թագաւորըն Քրիստոս. տօնեցէք ցընծութեամբ զնաւակատիս հոգւոց մերոց նորոգեալք ի հնութենէ. Եւ ընդ հրեշտակս օրհնեսցուք զՔրիստոս ։

† Անքննելի է խորհուրդ տնօրէնութեան քո Քրիստոս. որ իջեր ի Հօրէ ի սէր հարսին եկեղեցւոյ զոր ընտրեցեր. որով փառաբանեմք Քրիստոս անմահ թա-

զաւտր։ Էրեւեցար յարուցեալ եկեղեցւոյ քո հիմանցն· յորմէ Թովմաս հրաժարէր ոչ հաւատալ զքեզ տեսողացն· որում ցուցեր այսօր փափագողին զվէրըս մարմնոյդ։ Սպրսելով Թովմայի· շօշափէր ըզխոցուած տիգին եւ զբեւեռացն· եւ գոչելով վերաձայնէր Տէր եւ Աստուած դաւանելով ըզյարուցեալդ· որով առաք զերանելին որք ոչ տեսեալ հաւատացաք։ Զհետ ...

Յաղթական քեզ օրհնութիւնք Տէր որ զխորոց ։ 25։

---

## ՑԱՌԱԻՕՏՈՒ

### ՀԱՐՑ ԱԿ

Որ խոնարհեցար յանճառ փառաց փեսայդ անմահ եւ երկնաւոր· ի սէր հարսին քո եկեղեցւոյ· զոր մաքրեցեր աւազանին վերըստին ծնընդեամբն· Օրհնեմք ըզքեզ Աստուած հայրըն մերոց։ Որ կենդանարար նոր յարութեամբքդ քո նորոգեցեր զհնացեալքըս մեզ· որով ցընծայ այսօր եկեղեցի ընդ նորագումըն բնութեան մերոյ· օրհնեմք։ Այսօր մանկանք առագաստի պայծառացեալք վայելչութեամբ· տօնեն ընդ զօրըս հրեշտակաց զնաւակատիս փրկութեան մերոյ· օրհնեմք։

Գ· Ըզ Տէր օրհնեցէք ∥ եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան։ Նորոգեցարուք նորոգութեամբ կենաց այսօր յարութեամբըն Քրիստոսի նոր ժողովուրդք· եւ բարձր։ Նոր Իսրայէլ կոչեցեալք ի Քրիստոս նոր օրհնութիւնս վեր առաքեսցուք· նորոգողին տիեզերաց յարուցելոյն ի մեռելոց· եւ բարձր։

### ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԱԿ

Նոր խորանիդ արեգականն արդարութեան նոր օրհնութիւնս տայցուք· ∥ եւ անդադար բարեբանեսցուք· Նոր տաճարիդ անճառ լուսոյն որ ի Հօրէ նոր երգ·

երգեսցուք. եւ: Զնոր խառնարանըդ հրաշալի նոր խառընման բանին եւ մարմնոյ. հոգեւոր երգով բարեբանեսցուք:

ՈՂՈՐՄԵԱ ԱԿ

Որ վերըստին նորոգեցեր ըզմեզ ի հնութենէ հինն Ադամայ. եւ ըզսկըզբնատիպին գեղեցկութիւնըն նըկարեցեր նորաստեղծեալ յոգիս հրաշափառապէս. || աղաչեմք ըզքեզ Քրիստոս ողորմեա: Որ զբարձրագոյն նաւակատեաց խորհուրդ հանդերձելոցն այսօր ծանուցեր. կենդանարար եւ սքանչելի քո յարութեամբդ ի մեռելոց. աղաչեմք: Ընդ քեզ յարուցեր յուսով յանմահութիւն զմահացու բնութիւնս. որով նըստար ընդ աջմէ հօր զլուխդ եկեղեցւոյ. հրաւիրելով զանդամըս քո ի նոյն միութիւն. աղաչեմք:

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԱԿ

Այսօր նոր ժողովուրդք ընդ երկնայնոց լուսեղինացըն համաձայնեալք. նորոգողին ազգի մարդկան վեր երգեսցուք որ վասըն մեր մեռաւ եւ յարեաւ. || ասելով փառաւորեալ է քո յարութիւնդ: Այսօր որդիք Սիոնի ծընեալք աւազանին շնորհօք յորդիս Աստուծոյ. ի նաւակատիս տաճարի բնութեան մերոյ գովեցէք զփեսայն եկեալ յառագաստէ նոր գերեզմանին. ասելով: Այսօր մանկունք հաւատոյ կատարելով զնաւակատիս վերին նոր Երուսաղեմի. նորոգեցէք ըզպատմուճան հոգւոյ ձերոյ. եւ ընդ որդւոյ լուսոյ նոր Սիոնի. բարեբանեցէք զՔրիստոս թագաւորն. ասելով:

ՍԱՂՄՈՍ ՁԴ

Կ8. Ցոյց մեզ Տէր զողորմութիւնս քո, և զփրկութիւնըս քո տուր մեզ:

Փխ. Հաճեցար Տէր ընդ երկիր քո, և դարձուցեր ըզգերութիւն Յակովբայ:

Թողեր զանիրաւութիւն ժողովրդեան քո, ծածկեցեր զամենայն մեղս նոցա:

՝ Տես ի Զեկուցումն, էջ ԺԴ:

*Լռեցուցեր զամենայն սրտմտութիւնս քո , դարձար ի բարկութենէ սրտմտութեան քո ։*

*Դարձ առ մեզ Աստուած փրկիչ մեր , և դարձո զըղբամըտութիւնս քո ի մէնջ ։*

*Մի՛ յաւիտեան բարկանար մեզ Տէր , և մի՛ ձգեր ըդբարկութիւն քո ազգէ մինչև յազգ ։*

*Աստուած դու դարձեալ կեցուսցես զմեզ , ժողովուրդ քո ուրախ եղիցի ի քեզ ․*

*Ցոյց մեզ Տէր զողորմութիւնս քո , և զփրկութիւնս քո տուր մեզ ։*

*Լուայց զինչ խօսի Տէր Աստուած մեր ․ խօսեսցի զխաղաղութիւն ժողովրդեան իւրոյ առ սուրբս իւր՝ և առ այնոսիկ որ դարձեալ են առ նա սրտիւք ։*

*Սակայն մերձ է առ երկիւղածս իւր փրկութիւն նորա , բնակել փառաց նորա յերկրի մերում ։*

*Ողորմութիւն և ճշմարտութիւն պատահեսցին , արդարութիւն և խաղաղութիւն համբուրեսցին ։*

*Ճշմարտութիւն յերկրէ բուսաւ , արդարութիւն յերկնից երևեցաւ ։*

*Տէր տացէ զքաղցրութիւն և երկիր մեր տացէ զպտուղ իւր ․ արդարութիւն առաջի նորա գնասցէ , դիցէ ի ճանապարհի զգնացս իւր ։*

**Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու ։ Դ ․ 14 ։**

**Տէրն մեր Յիսուս Քրիստոս**

*Եւ դարձաւ (Յիսուս) զօրութեամբ Հոգւոյն ի Գալիլեա , և ել համբաւ զնմանէ ընդ ամենայն կողմանս գաւառին ․ և նա ուսուցանէր ի ժողովուրդս նոցա փառաւորեալ յամենեցունց ։ Եւ եկն ի Նազարեթ՝ ուր սնեալն էր , և եմուտ ըստ սովորութեան իւրում յաւուր շաբաթու ի ժողովուրդն ։ Եւ ետուն նմա գիրս զԵսայեայ մարգարէի , և յարեաւ ընթեռնուլ ․ և իբրև եբաց ըզգիրսն՝ եգիտ զայն տեղի յորում գրեալն էր ․ Հոգի Տեառըն ի վերայ իմ , վասն որոյ և օծ իսկ զիս ․ աւետարանել աղքատաց առաքեաց զիս , բժշկել զբեկեալս սըրտիւ ․ քարոզել գերեաց զթողութիւն և կուրաց տեսանել , արձակել զվիրաւորս ի թողութիւն , քարոզել զտարեկան Տեառն ընդունելի ։ Եւ խփեալ զգիրսն՝ ետ ցպաշտօնեայն և նստաւ ․ և ամենեցուն որ ի ժողովրդեանն էին աչք՝ ի*

Digitized by Google

նա հայէին։ Եւ սկսաւ ասել ցնոսա. այսօր լցան գիրքս այս յականջս ձեր։ Եւ ամենեքին վկայէին նմա, և զարմանային ընդ բանս շնորհացն որ ելանէին ի բերանոյ նորա, և ասէին. ո՞չ սա է որդին Յովսեփայ։ Եւ ասէ ցնոսա. ապաքէն ասիցէք առ իս զառակս զայս, բժիշկ, բժշկեա զանձն քո. որչափ լուաք՝ զոր արարեր ի Կափառնաում, արա և աստ ի քում գաւառի։ Եւ ասէ. ամէն ասեմ ձեզ, թէ չէ մարգարէ ընդունելի ի քաղաքի իւրում։ Արդարև ասեմ ձեզ, զի բազում այրիք էին յաւուրս Եղիայի ի մէջ Իսրայելի, յորժամ փակեցանն երկինք զերիս ամս և զվեց ամիս, և եղև սով մեծ ընդ ամենայն երկիր. և ոչ առ մի ի նոցանէ առաքեցաւ Եղիա, բայց միայն ի Սարեփթա Սիդոնացւոց առ կին մի այրի։ Եւ բազում բորոտք էին յԻսրայելի առ Եղիսէիւ մարգարէիւ. և ոչ ոք ի նոցանէ սրբեցաւ, բայց միայն Նէեման Ասորի։ Եւ լցան ամենեքին բարկութեամբ ի ժողովրդեանն՝ իբրև լսէին զայս. և յարուցեալ հանին զնա արտաքոյ քաղաքին, և ածին զնա մինչև յարտևան լերինն՝ յորոյ վերայ քաղաքն նոցա շինեալ էր՝ գահավէժ առնել զնա։ Եւ նա անցեալ ընդ մէջ նոցա գնայր։ 30։

Երգ. Նորաստեղծ։ Քող. Խնդր։ Կեցո։ Աղ. Քում ամե։

---

ՅԵՐԵԿՈՅԻՆ

*ՍԱՂՄՈՍ ՃԽԹ*

Օրհնեցէք զՏէր յօրհնութիւն նոր, օրհնութիւն նմա յեկեղեցիս սրբոց։

Ուրախ եղև Իսրայէլ յարարիչ իւր, որդիք Սիօնի ցնծասցեն ի թագաւորն իւրեանց։

Օրհնեսցեն զանուն նորա օրհնութեամբ, սաղմոսիւք և օրհնութեամբ սաղմոս ասասցեն նմա։

Հաճի Տէր ընդ ժողովուրդս իւր սուրբ, և բարձր առնէ զհեզս ի փրկութեան։

Պարծեսցին սուրբքն փառօք, և ցնծասցեն ի հանգիստս իւրեանց, և բարձր արասցեն զԱստուած բերանովք իւրեանց։

Սուր երկսայրի եւ ի ձեռս նոցա, առնուլ զհատուցումն ի հեթանոսաց, յանդիմանութիւն ամենայն ժողովրդոց։

Digitized by Google

կապել զԹագաւորս նոցա կապանօք , և զզօրաւորս նոցա ձեռնակապօք երկաթեօք :

Առնել ի նոսա զդատաստանն գրեալ . փառք այս են ամենայն սրբոց նորա :

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Յովհաննու : ԻԱ . 15 :

Յետ յարութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի :

Եւ իբրեւ ճաշեցին , ասէ ցՍիմոն Պետրոս : 564 :

Եւ ելանեն խաչն և աւետարանաւ և ամենայն զարդարանօք յան-դաստան , ասելով

ՇԱՐԱԿԱՆ Դ Կ

Այսօր նշան յաղթող երեւեալ ի յերկրի . պայծառացոյց ըզտիեզերս . զէն յաղթութեան ետուր ըզխաչ քո Տէր . || ապրեցուցանել ըզմեզ ի պատրանաց Թշնամւոյն : Փայտ կենաց կանգնեալ ի մէջ տիեզերաց . լոյս եւ պայծառ ազգի մարդկան . սա պահեսցէ ըզմեզ յամենայն վտանգից մերոց . ապրեցուցանել : Յաղթող զօրութեամբ խաչիւ քո պահեա ըզմեզ Քրիստոս Աստուած . որ տարածեցեր ըզձեռս քո ի նմա . եւ լուծեր ըզկնիք դատապարտութեան յանցանաց մերոց . ապրեցուցանել :

ՍԱՂՄՈՍ Դ . յայնխ .

48 . Նշանեցաւ առ մեզ լոյս երեսաց քոց և ետուր ուրախութիւն սրտից մերոց :

Փխ . Ի կարդալ իմում լուար ինձ Աստուած : 438 :

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի : Իէ . 50 :

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ (Յիսուս) դարձեալ աղաղակեաց ի ձայն մեծ , և արձակեաց զոգին : Եւ ահա վարագոյր տաճարին ցելաւ յերկուս ի վերուստ մինչև ի վայր , և երկիր շարժեցաւ , և վէմք պատառեցան , և գերեզմանք բացան , և բազում մարմինք ննջեցելոց սրբոց յարեան , և ելեալ ի գերեզմանաց յետ յարութեանն նորա՝ մտին ի քաղաքն սուրբ , և երեւեցան բազմաց : Իսկ հարիւրապետն և որ ընդ նմա պահէին զՅիսուս՝ իբրև տեսին զշարժումն և զե-

Digitized by Google

ղետլսն, իւրկեան յոյժ և ասեն. արդարև Աստուծոյ Որդի էր սա: Էին անդ կանայք բազումք, կային ի հեռաստանէ և հայէին, որք եկին զկնի Յիսուսի ի Գալիլեէ պաշտել զնա. յորս էր Մարիամ Մագդաղենացի, և Մարիամ Յակովբայ և Յովսեայ մայր, և մայր որդւոցն Զեբեդեայ: Եւ իբրև երեկոյ եղև, եկն այր մի մեծատուն յԱրիմաթեայ, որում անուն էր Յովսէփ, որ աշակերտեցաւ իսկ Յիսուսի. սա մատուցեալ առ Պիղատոս խնդրեաց զմարմինն Յիսուսի. յայնժամ Պիղատոս հրամայեաց տալ զմարմինն: Եւ առեալ զմարմինն Յովսէփ՝ պատեաց սուրբ կտաւովք, և եդ ի նոր գերեզմանի՝ զոր փորեաց ի վիմի. և թաւալեցուցեալ կափարիչ դրան գերեզմանին վէմ մի մեծ՝ գնաց: Անդ էր Մարիամ Մագդաղենացի, և միւս Մարիամն, նստէին հանդէպ գերեզմանին: 61:

Քարոզ. Եւ ևս խաղաղութեան: Վասն ի վերուստ: Ե- [illegible] և չորս կողմն աշխարհի:

Ձայնէ Քարոզ. Սուրբ խաչիւ: Աղօթք. Պահպանեա:

Եւ ի դառնալն յեկեղեցին Սարկաւագն քարոզէ.

Եւ ևս խաղաղութեան: Քահանայն. Օրհնութիւն և փառք: Եւ սկսանին խոնարհեցո և Ապրեցո:

ՀԱՄԲԱՐՁԻ ԴԿ

Յորժամ եկին ի գերեզմանն իւղաբեր: Ա. երգէ դասն: 47:

ՍԱՂՄՈՍ ՃԾ

Օրհնեցէք զԱստուած ի սրբութեան նորա, օրհնեցէք զնա ի հաստատութեան ի զօրութեան նորա:

Օրհնեցէք զնա ի զօրութեան նորա, օրհնեցէք զնա ի բազում մեծութեան նորա:

Օրհնեցէք զնա ի ձայն օրհնութեան, օրհնեցէք զնա սաղմոսիւք և օրհնութեամբ:

Օրհնեցէք զնա ցնծութեամբ, գովեցէք զնա ուրախութեամբ:

Օրհնեցէք զնա ի բանս քաղցր, գովեցէք զնա ի բարբառ լսելի:

Օրհնեցէք զնա ի ձայն գոհութեան. ամենայն հոգիք՝ օրհնեցէք զՏէր:

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Յովհաննու ։ Ի · 26 ։

Յետ յարութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։

Եւ յետ ութ աւուր դարձեալ էին ի ներքս աշակերտքն, և Թովմաս ընդ նոսա · գայ Յիսուս դրօքն փակելովք, և եկաց ի մէջ և ասէ · ողջոյն ընդ ձեզ ։ Ապա ասէ ցԹովմաս · բեր զմատունս քո և արկ այսր, և տես զձեռս իմ · և բեր զձեռն քո, և մխեա ի կողս իմ · և մի՛ լինիր անհաւատ՝ այլ հաւատացեալ ։ Պատասխանի ետ Թովմաս և ասէ ցնա · Տէր իմ և Աստուած իմ ։ Ասէ ցնա Յիսուս · այդ զի տեսերդ զիս և հաւատացեր, երանի որոց ոչ իցէ տեսեալ՝ և հաւատասցեն ։ Բազում և այլ նշանս արար Յիսուս առաջի աշակերտացն իւրոց՝ որ ոչ է գրեալ ի գիրս յայսմիկ ։ Այլ այս այնչափ ինչ գրեցաւ, զի հաւատայցէք եթէ Յիսուս Քրիստոս է Որդի Աստուծոյ · և զի հաւատայցէք, և զկեանսն յաւիտենականս ընդունիցիք յանուն նորա ։ 31 ։

Քարոզ · Խնդրեսցուք ։ Կեցո ։ Աղօթ · Թագաւոր ։

# Բ · ԵՐԿՈՒՇԱԲԱԹԻ · ԱՁ

## Ի ԳԻՇԵՐԻ

### ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԱՁ

Երգեսցուք երգ նոր Աստուծոյ փրկչին մերոյ ։ 3 ։

Յայսմ օրէ սկսեալ պարարեալ՝ ամէն օր մինչ ի Հոգւոյ գալուստն օրհնութիւն զատկօրհնութիւններն ասա ի յայնէն ։

### ՅԱՐՈՒԹԵՍՈՒ

### ՀԱՐՑ ԱԿ

Որ եկիր ի փրկութիւն վասն ազգի մարդկան · ‖ Ընգքեզ անդադար բարեբանեմք Աստուած հարցն մերոց ։ Յանձն առեր ըղչարչարանս և խաչի համբերեցեր · Ընգքեզ ։ Կընքեցար վիմով յարուցիչըդ մեռելոց · Ընգքեզ ։

Գ · ԸզՏէր օրհնեցէք ‖ բարձր արարէք ըզնա յաւիտեան ։ Որ անմահըն մարմնով վասըն փրկու-

թեան մերոյ ըզմահ ճաշակեաց և խափանեաց ըզմահու թագաւորութիւնն. բարձր: Որ յաւէժ կենդանութեան առհաւատչեայ ըզյարութիւն աստուածային մարմնոյն պարգեւեաց մարդկան. եւ եւս առաւել բարձր:

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԱԿ

Ուրախ լեր Աստուածածին. տաճար անխախ: 209:

ՈՂՈՐՄԵԱ ԱԿ

Սուրբ Աստուած որ վասն մեր ըզմահ ճաշակեցեր. և յերրորդ աւուր յարեար ողորմեա: Սուրբ Աստուած որ ըզդըժոխս աւերեցեր. և զգերեալսն փրկեցեր ի նմանէ ողորմեա: Սուրբ Աստուած որ ի յերկինս համբարձար ընդ աջմէ Հօր նստար ի բարձունս ողորմեա:

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԱԿ

Առաքեցար ի Հօրէ Բան Աստուած ի փրկութիւն ազգի մարդկան ‖ օրհնեմք ըզքեզ սուրբ Աստուած: Ի գերեզման լիջեր Թագաւոր անմահ. եւ ի Հօրէ ոչ մեկնեցար օրհնեմք: Ի յերրորդ աւուր յարեար աստուածապէս եւ ի յերկինս համբարձար փառօք յարութեան քո Տէր օրհնեմք:

ՍԱՂ. ՁԴ. ԿՑ. Ցոյց մեզ Տէր: Փխ. Հաճեցար: 567:

Սրբոյ Աւետարանին որ ըստ Ղուկասու: Դ. 31:

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ էջ ի Կափառնաում ի քաղաքն Գալիլեացւոց, և ուսուցանէր զնոսա ի շաբաթուն: Եւ զարմանային ընդ վարդապետութիւնն նորա, զի իշխանութեամբ էր բանն նորա: Եւ էր ի ժողովրդեանն այր մի, զոր ունէր այս դիւի պղծոյ, և աղաղակեաց ի ձայն մեծ և ասէ. Թուլացո, զի՞ կայ մեր և քո, Յիսուս Նազովրեցի, եկիր կորուսանել զմեզ. գիտեմք զքեզ ով ես սուրբդ Աստուծոյ: Սաստեաց ի նա Յիսուս՝ և ասէ. պապանձեաց և ել ի դմանէ: Զգետնեաց զնա դեւն ի միջի անդ, և ել ի նմանէ, և ոչ ինչ վնասեաց նմա: Եւ եղեն զարմանալիք ի

վերայ ամենեցուն. խօսէին ընդ միմեանս և ասէին. զի՞նչ է բանս այս, զի իշխանութեամբ և զօրութեամբ սաստէ այսոց պղծոց՝ և ելանեն ։ Եւ երթայր հռչակ ըզնմանէ յամենայն տեղիս շուրջ զգաւառաւն ։ Եւ յարուցեալ ի ժողովրդենէ անտի, եմուտ ի տուն Սիմովնի. զոքանչ Սիմովնի տագնապէր ջերմամբ մեծաւ. և աղաչեցին զնա վասն նորա. եկաց առ նմա, սաստեաց ջերմանն, և եթող զնա. և վաղվաղակի յարեաւ և պաշտէր զնոսա ։ Եւ ընդ արեւուն մտանել՝ ամենեքեան որոց էին հիւանդք ի պէսպէս ցաւս, բերէին զնոսա առ նա ։ Եւ նա իւրաքանչիւր ումեք ի նոցանէ դնէր ձեռս, և բժշկէր զնոսա ։ Ելանէին և դեւք ի բազմաց՝ աղաղակէին և ասէին, եթէ դու ես Որդի Աստուծոյ. և նա սաստէր և ոչ տայր նոցա թոյլ խօսել, զի գիտէին զնա թէ Քրիստոսն է ։ 42 ։

Քարոզ. խնդրեսցուք ։ Կեցո ։ Աղօթ+. Քում ամենազօր ։

---

## Ց Ե Ր Ե Կ Ո Ց Ի Ն

ՍԱՂ. ծխթ. Օրհնեցէք զՏէր յօրհնութիւն նոր ։ 569 ։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի ։ Դ. 12 ։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ իբրև լուաւ (Յիսուս) եթէ Յովհաննէս մատնեցաւ, մեկնեցաւ գնաց ի Գալիլեա. և թողեալ զՆազարեթ, եկն բնակեցաւ ի Կափառնաում ի ծովեզերին, ի սահմանս Զաբուղոնի և Նեփթաղիմայ. զի լցցի բանն՝ որ ասացաւ ի ձեռն Եսայեայ մարգարէի. Երկիր Զաբուղոնի և երկիր Նեփթաղիմայ՝ ճանապարհ ծովու՝ յայնկոյս Յորդանանու, Գալիլեա հեթանոսաց. ժողովուրդ որ նստէր ի խաւարի՝ ետես լոյս մեծ. և որոց նստէին յաշխարհին և ի ստուերս մահու՝ լոյս ծագեաց նոցա ։ Յայնմ հետէ սկսաւ քարոզել Յիսուս և ասել. ապաշխարեցէք՝ զի մերձեալ է արքայութիւն երկնից ։ Մինչ դեռ զգնայր Յիսուս ընդ եզր ծովուն Գալիլեացւոց, ետես երկուս եղբարս զՍիմովն զկոչեցեալն Պետրոս և զԱնդրէաս եղբայր նորա՝ արկեալ ուռկան ի ծով. քանզի ձկնորսք էին ։ Եւ ասէ ցնոսա. եկայք զկնի իմ, և արարից զձեզ որսորդս մարդկան ։ Եւ նոցա թողեալ վաղվաղակի զգործիսն՝ գնացին զհետ նորա ։ Եւ մատուցեալ անտի յառաջ ետես

Digitized by Google

այլ երկուս եղբարս, զՅակոբոս Զեբեդեայ և զՅովհաննէս զեղբայր նորա ի նաւի՝ Զեբեդեաւ հանդերձ հարբն իւրեանց, մինչդեռ կազմէին զուռկանս իւրեանց. և կոչեաց զնոսա: Նոցա թողեալ վաղվաղակի զնաւն և ըզհայր իւրեանց, գնացին զհետ նորա: Եւ շրջէր Յիսուս ընդ ամենայն կողմն Գալիլեացւոց, ուսուցանէր ի ժողովուրդս նոցա և քարոզէր զաւետարանն արքայութեան, և բժշկէր զամենայն հիւանդութիւնս և զամենայն ախտս ի ժողովրդեանն: Եւ ել լուր նորա ընդ ամենայն երկիրն Ասորւոց, և մատուցին առ նա զամենայն հիւանդս՝ որ նեղեալ էին ի պէսպէս ցաւս և ի տանջանս, և զդիւահարս և զլուսնոտս և զանդամալոյծս. և բժշկեաց զնոսա: Եւ երթային զհետ նորա ժողովուրդք բազումք ի Գալիլեէ և ի Դեկապոլեայ և յԵրուսաղեմէ և ի Հրէաստանէ, և յայնկոյս Յորդանանու, և բժշկեաց զնոսա: 25:

ՀԱՄԲԱՐՁԻ ԱԶ

Փառք յարութեան քո Տէր: Բ. Եքե+ ձայն: 28:

ՍԱՂ. ԾԹ. Օրհնեցէք զԱստուած ի սրբութեան: 571:

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մարկոսի: Ա. 14:

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ յետ մատնելոյն Յովհաննու, եկն (Յիսուս) ի Գալիլեա. քարոզէր զաւետարանն Աստուծոյ՝ և ասէր, թէ կատարեալ է ժամանակ, և հասեալ է արքայութիւնն Աստուծոյ. ապաշխարեցէք՝ և հաւատացէք յաւետարանն: Իբրև անցանէր առ ծովեզերբն Գալիլեացւոց, ետես զՍիմոն և զԱնդրէաս զեղբայր Սիմոնի, զի արկեալ էր նոցա ուռկանս ի ծով. քանզի ձկնորսք էին: Եւ ասէ ցնոսա Յիսուս. եկայք զկնի իմ, և արարից ըզձեզ լինել որսորդս մարդկան: Եւ վաղվաղակի թողեալ զուռկանսն, գնացին զհետ նորա: Եւ մատուցեալ անտի սակաւիկ մի յառաջ, ետես զՅակովբոս Զեբեդեայ և ըզՅովհաննէս եղբայր նորա, և զնոսա ի նաւին մինչ կազմէին զուռկանս, և կոչեաց զնոսա: Եւ վաղվաղակի թողեալ զհայրն իւրեանց Զեբեդէոս ի նաւին վարձկանօքն հանդերձ, գնացին զհետ նորա: 20:

Քարոզ. Խնդրեսցուք: Կեցո: Աղօթ+. Թագաւոր:

---

# Բ · ԵՐԵՔՇԱԲԱԹԻ · ԱԿ

## ՑԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԱԿ

Որ վասըն մերոյ փրկութեան իջեր ի յերկնից ·
միածին Որդի ‖ Քրիստոս փրկիչ մեր փրկեա զմեզ ·
Տէր Աստուած հարցըն մերոց ։ Ի խաչին բեւեռեցար
Բանդ ըմբռնելի մարմնով · եւ լուծեր ըզկապանըս մե-
ղաց Քրիստոս ։ Որ ներքօրեայ թաղմամբ քո մեռուցեր
ըզմահ · եւ յարութեամբըդ քո կենագործեցեր զաշխարհս ·
առաւել զովեալ Քրիստոս ։

Գ · ԸզՏէր ‖ օրհնեցէք եւ բարձր արարէք ըզնա յա-
ւիտեան ։ Որ ըսպան ըզմահ թաղմամբն իւրով · եւ
յարութեամբն իւրով մեզ կեանըս պարգեւեաց · մեծա-
բան հաւատացեալք օրհնեցէք ։ Որ նըստի ընդ աջմէ
Հօր ծընողի իւրոյ · եւ մարդասիրապէս խընամէ զարա-
րածս · քահանայք հոգեւոր երգով օրհնեցէք ։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԱԿ

Անարատ տաճար բնակարան անբաւ Բանին ։ 210.

ՈՂՈՐՄԵԱ ԱԿ

Դու ես Քրիստոս · կեանք և յարութիւն ազգի մարդ-
կան · ողորմեա ։ Դու յարուցեալ · նորոգեցեր ըզտիե-
զերս ողորմեա ։ Ցոյց յարութեան մերոյ · աղբիւր կե-
նաց և փրկութեան ողորմեա ։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԱԿ

Յարուցեալ Տէրն ի գերեզմանէն · Միածինն որպէս
փայլակն եւ լոյս փառաց ծագեաց յաշխարհս · եւ երկինք
և երկիրըս ցընծային ։ Մեծ է յարութիւն Աստուած-
որդւոյն · քանզի դրունք երկնից բացեալ եղեն և հա-
անոյշ բուրեաց յաշխարհս · եւ լըցոյց զարարածս ամե-
նայն ։ Զօրք երկնից իջեալ էին եւ բանակեալ շուրջ

ըզգերեզմանաւն եւ հոգեղէն բարբառովն երգէին. Տէր օրհնեալ է քո յարութիւնդ ։

ՍԱՂ. ՁԴ. ԿՅ. Ցոյց մեզ ։ Փխ. Հաճեցար ։ 567 ։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու ։ Դ. 43 ։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ իբրեւ տիւ եղեւ՝ ել գնաց յանապատ տեղի ։ 208 ։

Քարոզ. Խնդրեսցուք ։ Կեցո ։ Աղօթ. Քում ամենազօր ։

---

## ՅԵՐԵԿՈՅԻՆ

ՍԱՂ. ՃԽԹ. Օրհնեցէք զՏէր յօրհնութիւն նոր ։ 569 ։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի ։ Ե. 1 ։

Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի

Եւ տեսեալ զժողովուրդսն՝ ել ի լեառն. և իբրեւ նըստաւ անդ՝ մատեան առ նա աշակերտքն նորա. և բացեալ զբերան իւր ուսուցանէր զնոսա, և ասէր. Երանի աղքատաց հոգւով, զի նոցա է արքայութիւն երկնից ։ Երանի սգաւորաց, զի նոքա մխիթարեսցին ։ Երանի հեզոց, զի նոքա ժառանգեսցեն զերկիր ։ Երանի որ քաղցեալ և ծարաւի իցեն արդարութեան, զի նոքա յագեսցին ։ Երանի ողորմածաց, զի նոքա ողորմութիւն գըտցեն ։ Երանի այնոցիկ՝ որ սուրբ են սրտիւք, զի նոքա զԱստուած տեսցեն ։ Երանի խաղաղարարաց, զի նոքա որդիք Աստուծոյ կոչեսցին ։ Երանի որ հալածեալ իցեն վասն արդարութեան, զի նոցա է արքայութիւն երկնից ։ Երանի է ձեզ՝ յորժամ նախատիցեն զձեզ և հալածեսցեն, և ասիցեն զամենայն բան չար զձէնջ սուտ վասն իմ. ցնծացէք և ուրախ լերուք, զի վարձք ձեր բազում են յերկինս. զի այսպէս հալածեցին զմարգարէսն որ յառաջ քան զձեզ էին ։ Դուք էք աղ երկրի. ապա թէ աղն անհամի՝ իւ յաղիցի. ոչ իմիք ազդիցէ այնուհետեւ, բայց եթէ ընկենուլ արտաքս՝ և կոխան լինել ի մարդկանէ ։ Դուք էք լոյս աշխարհի. ոչ կարէ քաղաք թաքչել՝ որ ի վերայ լերին կայցէ. և ոչ լուցանեն ճրագ՝ և դնեն ընդ գրուանաւ, այլ ի վերայ աշտանակի. և լոյս տայ ամենեցուն՝ որ ի տանն իցեն. այնպէս լուսաւորեսցէ լոյս ձեր առաջի մարդկան, որպէս զի տեսցեն



Digitized by Google

զգործս ձեր բարիս, և փառաւորեսցեն զՀայր ձեր որ յերկինս է ։ 16 ։

ՀԱՄԲԱՐՁԻ ԱԿ

Ցարուցեալ Տէրն ի գերեզմանէն ։ Բ. Երեք տուն ։ 30 ։

ՍԱՂ. ԾԾ. Օրհնեցէք զԱստուած ի սրբութեան ։ 571 ։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մարկոսի ։ Ա. 21 ։

Տերամբ մերով Յիսուսիւ Քրիստոսիւ

Եւ մտանեն ի Կափառնաում, և իսկ և իսկ ի շաբաթու մտեալ ի ժողովուրդն ուսուցանէր զնոսա ։ Եւ զարմանային ընդ վարդապետութիւն նորա, զի ուսուցանէր զնոսա իբրև իշխանութեամբ՝ և ոչ որպէս դպիրքն ։ Եւ էր ի ժողովրդեանն նոցա այր մի, յորում այս պիղծ գոյր ի նմա. որ աղաղակեաց և ասէ. Թոյլ տուր, զի՞ կայ մեր և քո, Յիսուս Նազովրեցի, եկիր կորուսանել զմեզ. գիտեմք զքեզ ով ես, սուրբդ Աստուծոյ ։ Սաստեաց ի նա Յիսուս և ասէ. կարկեաց՝ և ել ի դմանէ ։ Եւ զարկոյց զնա այսն պիղծ, և աղաղակեաց ի ձայն մեծ, և ել ի նմանէ ։ Եւ զարմացան ամենեքին, մինչև հարցանել ընդ միմեանս և ասել. զի՞նչ է այս նոր վարդապետութիւնըս, զի իշխանութեամբ և այսոց պղծոց սաստէ, և հնազանդին սմա ։ Եւ ել լուր նորա ընդ ամենայն կողմն Գալիլեացւոց ։ Եւ վաղվաղակի ելեալ ի ժողովրդենէն, եկն ի տուն Սիմովնի և Անդրեայ՝ Յակովբաւ և Յովհաննու հանդերձ ։ Եւ զոքանչ Սիմովնի դնէր ջերմացեալ. և վաղվաղակի ասեն ցնա վասն նորա ։ Եւ մատուցեալ յարոյց զնա՝ կալեալ զձեռանէ նորա. և եթող զնա տենդըն, և պաշտէր զնոսա ։ Եւ իբրև երեկոյ եղև ի մտանել արեգականն բերէին առ նա զամենայն հիւանդս և զդիւահարս. և էր ամենայն քաղաքն ժողովեալ առ դուրսն ։ Եւ բժշկեաց բազում հիւանդս ի պէսպէս ախտից, և դևս բազումս եհան. և ոչ տայր խօսել դիւացըն, զի գիտէին զնա՝ թէ Քրիստոսն է ։ 34 ։

Քարոզ. Խնդրեսցուք ։ Կեցո ։ Աղօթք. Թագաւոր ։

---

# Բ. ՉՈՐԵՔՇԱԲԱԹԻ. ԲՁ

## ՅԱՐՈՒԹԵԱՆ

ՀԱՐՑ ԱԿ

Անընկճելըն Բանըդ մարմնացար ի կուսէն

յանձն առեր կամաւ զխաչն եւ զչարչարանս
|| Աստուած հարցն մերոց։ Էակից Հօր և Հոգւոյն
Բանդ Աստուած ի գերեզման իջեր մնալով ա-
նապականն Աստուած։ Յարեար ի մեռելոց յա-
ւուր երրորդի լուծանելով զիշխանութիւն մա-
հու Աստուած։

Գ. Ըզ Տէր օրհնեցէք || բարձր արարէք ըզնա
յաւիտեան։ Հրաշալի ըզյարութիւն աստուածորդւոյն.
ժողովուրդք բարեբանելով բարձր։ Միաբան
գովեցէք ըզյարուցեալն ի մեռելոց. քահանայք
հոգեւոր երգով բարձր։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԱԿ

Ով զերահրաշ ծաղիկ բուրեալ յԵդեմայ. հոտ։ 211։

ՈՂՈՐՄԵԱ ԱԿ

Իջեր յերկնից Որդի Աստուծոյ. եւ մարմնացար ի
սրբոյ կուսէն. որ անմեկնելիդ ես ի Հօրէ ողորմեա։
Եկիր ի չարչարանըս կամաւորապէս Աստուած. եւ
խաչեցար վասն ազգի մարդկան. եւ ի գերեզման ի-
ջեր անապական ողորմեա։ Զմահ լուծեր և զաշխարհս
ազատեցեր կարողապէս Տէր. եւ ի մեռելոց յարեար
իշխանութեամբ ողորմեա։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԱԿ

Սքանչելի հրեշտակըն Տեառն. ցընծութեամբ ի-
ջեալ ի գերեզմանըն հարկանէր. փող յարութեանըն
Տեառն։ Ի հարկանել փողոյն. պահապանքըն զար-
հուրեցան եւ եղեն. ի յահէն որպէս մեռեալ։ Զայն
եղեւ ի հրեշտակէն. բարբառ եղեւ ուրախութեան Տէր
յարեաւ. փառք յարութեանըն Տեառն։ Դրօքըն
փակելովք. երեւեալ Յիսուս աշակերտացն եւ ա-
սէր. խաղաղութիւն ընդ ձեզ։

ՍԱՂ. ՁԴ. ԿՑ. Ցոյց մեզ: Փխ. Հաճեցար: 567:

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու: Ե. 12:

Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի

Եւ եղև ի հասանելն նորա ի մի ի քաղաքացն, ահա այր մի լի բորոտութեամբ՝ իբրև ետես զՅիսուս, անկեալ ի վերայ երեսաց աղաչեաց զնա և ասէ. Տէր, եթէ կամիս, կարող ես զիս սրբել: Ձգեաց զձեռն իւր՝ հասոյց ի նա և ասէ. կամիմ, սրբեաց: Եւ վաղվաղակի գնաց ի նմանէ բորոտութիւնն: Եւ նա պատուիրեաց նմա՝ մի ումեք ասել, այլ թէ երթ ցոյց զանձն քո քահանային. և մատո պատարագ վասն սրբութեան քո, որպէս և հրամայեաց Մովսէս՝ ի վկայութիւն նոցա: Եւ յորդէր առաւել բանն զնմանէ, և ժողովէին ժողովուրդք բազումք լսել և բժշկել ի հիւանդութենէ իւրեանց: Եւ նա խոյս տայր յանապատ տեղիս, և կայր յաղօթս: 16:

Քարոզ. Խնդրեսցուք: Կեցո: Աղօթ. Քում ամենազօր:

---

ՑԵՐԵԿՈՑԻՆ

ՍԱՂ. ԾԽԹ. Օրհնեցէք զՏէր յօրհնութիւն: 569:

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի: Ե: 17:

Տէրն մեր Յիսուս Քրիստոս ասէ.

Մի՛ համարիք եթէ եկի լուծանել զօրէնս կամ զմարգարէս. ոչ եկի լուծանել՝ այլ լնուլ: Ամէն ասեմ ձեզ՝ մինչև անցցեն երկինք և երկիր, յովտ մի՝ որ նշանախեց մի է, ոչ անցցէ յօրինացն և ի մարգարէից՝ մինչև ամենայն եղիցի: Որ ոք լուծցէ մի ինչ ի պատուիրանացս յայսցանէ ի փոքունց, և ուսուսցէ այնպէս զմարդիկ՝ փոքր կոչեսցի յարքայութեան երկնից: Իսկ որ արասցէ և ուսուսցէ, նա մեծ կոչեսցի յարքայութեան երկնից: Բայց ասեմ ձեզ, զի եթէ ոչ առաւելուցու արդարութիւն ձեր աւելի քան զդպրացն և զփարիսեցւոց, ոչ մտանիցէք յարքայութիւն երկնից: Լուարուք զի ասացաւ առաջնոցն, թէ մի՛ սպանաներ. զի որ սպանանիցէ՝ պարտական լիցի դատաստանի: Այլ ես ասեմ ձեզ, եթէ ամենայն որ բարկանայ եղբօր իւրում տարապարտուց՝ պարտաւոր լիցի դատաստանի. և որ ասիցէ ցեղբայր իւր յիմար՝ պարտաւոր լիցի ատենի. և որ ասիցէ ցեղ-

Digitized by Google

*բայր իւր մորոս՝ պարտաւոր լիցի ի գեհեն հրոյն։ Եթէ մատուցանիցես զպատարագ քո ի վերայ սեղանոյ, և անդ յիշեսցես՝ եթէ եղբայր քո ունիցի ինչ խէթ զքէն, թող զպատարագն քո առաջի սեղանոյն, և երթ նախ հաշտեաց ընդ եղբօր քում, և ապա եկեալ մատուցի՛ր զպատարագն քո։ Լեր իրաւախոհ ընդ ոսոխի քում վաղագոյն, մինչդեռ իցես ընդ նմա ի ճանապարհի. գուցէ մատնիցէ զքեզ ոսոխն դատաւորի, և դատաւորն դահճի. և արկանիցիս ի բանտ։ Ամէն ասեմ քեզ, ոչ ելանիցես անտի՝ մինչև հատուցանիցես զյետին նաքարակիտն։ Լուարուք զի ասացաւ՝ մի՛ շնար. բայց ես ասեմ ձեզ, թէ ամենայն որ հայի ի կին մարդ առ ի ցանկանալոյ նմա, անդէն շնացաւ ընդ նմա ի սրտի իւրում։ Եթէ ակն քո աջ գայթագղեցուցանէ զքեզ, խլեա զնա և ընկեա ի քէն. զի լաւ է քեզ եթէ մի յանդամոց քոց կորիցէ, և մի՛ ամենայն մարմինդ քո անկանիցի ի գեհեն։ Եւ եթէ աջ ձեռն քո գայթագղեցուցանէ զքեզ, հատ զնա և ընկեա ի քէն. զի լաւ է քեզ եթէ մի յանդամոց քոց կորիցէ, և մի՛ ամենայն մարմինդ քո արկանիցի ի գեհեն։ Ապաքէն ասացաւ, թէ որ արձակիցէ զկին իւր՝ տացէ նմա զարձակմանն։ Բայց ես ասեմ ձեզ, եթէ ամենայն որ արձակէ զկին իւր առանց բանի պոռնկութեան, նա տայ նմա շնալ, և որ զարձակեալն առնէ՝ շնայ։ Դարձեալ լուարուք զի ասացաւ առաջնոցն, մի՛ երդնուցուս սուտ, բայց հատուսցես Տեառն զերդմունս քո։ Այլ ես ասեմ ձեզ՝ ամենևին մի՛ երդնուլ, մի՛ յերկինս՝ զի աթոռ է Աստուծոյ, և մի՛ յերկիր՝ զի պատուանդան է ոտից նորա, և մի՛ յԵրուսաղէմ՝ զի քաղաք է մեծի արքայի. և մի՛ ի գլուխ քո երդնուցուս, զի ոչ կարես մազ մի սպիտակ առնել կամ թուխ։ Այլ եղիցի ձեր բան, այոն՝ այո, և ոչն՝ ոչ. զի աւելին քան զայն ի չարէն է։ Լուարուք զի ասացաւ, ակն ընդական, և ատամն ընդ ատաման։ Այլ ես ասեմ ձեզ, մի՛ կալ հակառակ չարի. այլ եթէ ոք ածիցէ ապտակ յաջ ծնօտ քո՝ դարձո նմա և զմիւսն։ Եւ որ կամիցի ոք դատել և առնուլ զշապիկս քո, թող ի նա և զբաճկոն քո։ Եւ որ տարապարհակ վարիցէ զքեզ մղոն մի, երթ ընդ նմա և երկուս. որում խնդրէ ի քէն՝ տուր, և որ կամի փոխ առնուլ ի քէն՝ մի՛ դարձուցանէր զերեսս։ Լուարուք ապաքէն զի ասա-*

Digitized by Google

ցաւ, սիրեսցես զընկեր քո, և ատեսցես զթշնամին քո։ Այլ ես ասեմ ձեզ, սիրեցէք զթշնամիս ձեր, օրհնեցէք զանիծիչս ձեր, բարի արարէք ատելեաց ձերոց, և աղօթս արարէք ի վերայ այնոցիկ՝ որ լլկենն զձեզ և հալածեն. զի եղիջիք որդիք Հօր ձերոյ որ յերկինսն է. զի զարեգակն իւր ծագէ ի վերայ չարաց և բարեաց, և աճէ անձրև ի վերայ արդարոց և մեղաւորաց։ Զի եթէ սիրիցէք զայնոսիկ որ սիրենն զձեզ՝ զի՞նչ վարձք իցեն. ո՞չ ապաքէն և մաքսաւորք զնոյն գործեն. և եթէ տայցէք միայն ողջոյն բարեկամաց ձերոց՝ զի՞նչ աւելի առնէք. ո՞չ ապաքէն մաքսաւորք և մեղաւորք զնոյն գործեն։ Արդ եղերուք դուք կատարեալք, որպէս և Հայրն ձեր երկնաւոր կատարեալ է։ 48։

ՀԱՄԲԱՐՁԻ ԲԶ

Եկին ի գերեզմանն առաւօտեան։ Բ. Երեք տօնն։ 33։

ՍԱՂ. ԾԸ. Օրհնեցէք զԱստուած ի սրբութեան։ 571։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մարկոսի։ Ա. 35։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ ընդ այգն ընդ առաւօտն յարուցեալ ել և գնաց յանապատ տեղի, և անդ կայր յաղօթս. և գնաց զհետ նորա Սիմովն և որ ընդ նմայն էին. և իբրև գտին զնա՝ ասեն ցնա, թէ ամենեքին խնդրեն զքեզ։ Եւ ասէ ցնոսա. եկայք երթիցուք և յայլ մօտաւոր գիւղաքաղաքսն, զի և անդ քարոզեցից. զի յայս իսկ եկեալ եմ։ Եւ քարոզէր ի ժողովուրդս նոցա ընդ ամենայն Գալիլեացիս, և դևս հանէր։ Գայ առ նա բորոտ մի, աղաչէր ի ծունր իջանէր և ասէր. Տէր, եթէ կամիս, կարող ես զիս սրբել։ Իսկ Յիսուս գթացեալ ձգեաց զձեռն, մերձեցաւ ի նա և ասէ ցնա. կամիմ՝ սրբեաց։ Եւ իբրև ասացն ցնա, վաղվաղակի գնաց ի նմանէ բորոտութիւնն, և սրբեցաւ։ Եւ սաստեալ նմա՝ եհան զնա արտաքս վաղվաղակի, և ասէ ցնա. զգոյշ լեր, մի ումեք ինչ ասիցես. այլ երթ ցոյց զքեզ քահանային, և մատո վասն սրբութեան քո պատարագ՝ զոր հրամայեաց Մովսէս՝ ի վկայութիւն նոցա։ Եւ նա ելեալ սկսաւ քարոզել յոյժ և հռչակ հարկանել զբանն, մինչ ոչ ևս կարող լինել նմա յայտնապէս ի քաղաք մտանել, այլ արտաքոյ յա-

Digitized by Google

Նապատ տեղիս էր . և գային առ Նա յամենայն կող-
մանց ։ 45 ։

Քարոզ . Խնդրեսցուք ։ Կեցո ։ Աղօթ+ . Թագաւոր ։

---

# Բ . ՀԻՆԳՇԱԲԱԹԻ . ԲԿ

## ՑԱՌԱՒՕՏՈՒ

### ՀԱՐՑ ԱԿ

Որ յաթոռ փառաց նըստիս ընդ Հօր . օրհնեալ բա-
նիւն ի դասուց քերովբէից ։ օրհնեալ Տէր Աստուած
հարցըն մերոց ։ Որ եկիր ի փըրկել ըզնախահայրն Ա-
դամ . ի ճաշակմանէ մահաբեր պըտղոյն . օրհնեալ ։
Որ փոխանակ ծառոյն գիտութեան ետուր ըզխաչ քո
Տէր . եւ արբուցեր ըմ մեզ ի կողահոս աղբերէդ .
օրհնեալ ։

Գ . Ըզտէր ։ օրհնեցէք եւ բարձր արարէք ըզը-
նա յաւիտեան ։ Որ եղոյծ ըզվտանգաւոր երկունըս
նախամօրն . ծընանելով ի սըրբոյ կուսէն . օր-
հնեցէք ։ Որ եբարձ ըզփշաբեր անիծադրութիւն բու-
սաբերին . բեւեռելով ի վերայ խաչին . օր-
հնեցէք ։ Որ ճաշակեացն ըզլեղի դառնութեան վասն
ազգի մարդկան . եւ պարգեւեաց ըզմարմին եւ զարիւն
իւր զանապական . օրհնեցէք ։

### ՄԵԾԱՑՈՒՑԷ ԱԿ

Զանճառելի զըլոյս աստուածութեանն . տնօրի ։ 213 ։

### ՈՂՈՐՄԵԱ ԱԿ

Որ խոնարհեցար յերկնից ի հայրական ծոցոյ . միա-
ծին Որդի Աստուծոյ և առեր մարմին ի սըրբոյ կու-
սէն վասըն մերոյ փըրկութեան ողորմեա ։ Ընդ մեզ
Աստուած շըրջեցար ընդ մեղաւորաց . եւ կոխեցեր
ըզգլուխ վիշապին և շիջան խայթոցք մահաբերին
եւ փըրկեցեր ըզտիեզերս ողորմեա ։ Բեւեռեցեր ըզ-

Digitized by Google

մեղս մեր ի վերայ խաչին. եւ համբերեալ մահու իջեր ի գերեզման կենդանութիւն շնորհեցեր ննջեցելոցն ի խաւարի. եւ զօրութեամբ յարեար ողորմեա:

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԱԿ

Հրաշալի ընդյարութիւն Աստուածածնորդւոյն. այսօր տեսեալ առաքելոցն եւ բազմութիւնք հրեշտակաց. || Երգէին երգ նոր անլռելի ձայնիւ: Զայն ահեղ գաբրիէլեան փողոյն. այսօր գոչէր աւետարանէր աւետիք են աշխարհի. երգէին: Լոյս մեծ եւ անհաս. այսօր ծագեաց սուրբ եկեղեցւոյ յարուցեալ ի մեռելոց Քրիստոս. երգեսցուք երգ նոր:

ՍԱՂ. ՁԴ. Կ8. Ցոյց մեզ: փխ. Հանեցար: 567:

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու: Ե. 17:

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ եղեւ ի միում աւուրց՝ և ինքն ուսուցանէր, և փարիսեցիքն և օրինացն վարդապետք նստէին. որք ժողովեալ էին յամենայն քաղաքաց Գալիլեացւոց և Հրէաստանի և Երուսաղեմի. և զօրութիւն Տեառն էր ի բժշկել զնոսա: Եւ ահա արք բերէին մահճօք զայր մի որ էր անդամալոյծ. և խնդրէին զնա մուծանել ի ներքս, և դնել առաջի նորա. և իբրև ոչ գտանէին թէ ընդ որ մուծանիցեն զնա ի ներքս վասն ամբոխին, ելին ի տանիս, և ի ցուոցն կախեցին զնա, և իջուցին մահճօքն հանդերձ ի մէջ առաջի Յիսուսի: Եւ տեսեալ զհաւատն նոցա՝ ասէ ցնա. այր դու, թողեալ լիցին քեզ մեղք քո: Սկսան խորհել դպիրքն և փարիսեցիք և ասեն. ո՞վ է սա՝ որ խօսի զհայհոյութիւնս. ո՞վ կարէ թողուլ զմեղս, բայց միայն Աստուած: Իբրև գիտաց Յիսուս զխորհուրդս նոցա, պատասխանի ետ և ասէ ցնոսա. զի՞ խորհիք ի սիրտս ձեր. զի՞նչ դիւրագոյն է, ասել՝ թողեալ լիցին քեզ մեղք քո, եթէ ասել՝ արի և գնա: Այլ զի գիտասջիք՝ եթէ իշխանութիւն ունի որդի մարդոյ յերկրի թողուլ զմեղս, ասէ ցանդամալոյծն. քեզ ասեմ՝ արի առ զմահիճս քո, և երթ ի տուն քո: Եւ առժամայն յարուցեալ առաջի ամենեցուն, առ զիւրև յորոյ վերայ ան-

կեալն դնէր, գնաց ի տուն իւր, և փառաւոր առնէր զԱստուած ։ Զարմանք կալան զամենեսին, և փառաւոր առնէին զԱստուած. լի եղեն ահիւ և ասեն, թէ տեսաք այսօր նոր նշան ։ 26 ։

Փոխ. Խնդրեսցուք ։ կեցո ։ Աղօթ. Քում ամենազօր ։

---

## ՑԵՐԵԿՈՅԻՆ

ՍԱՂ. ԾԽԹ. Օրհնեցէք զՏէր յօրհնութիւն նոր ։ 569 ։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի ։ Զ. 1 ։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս ասէ.

Զգոյշ լերուք ողորմութեան ձերում՝ մի՛ առնել առաջի մարդկան, որպէս թէ ի ցոյց ինչ նոցա. գուցէ և վարձս ոչ ընդունիցիք ի Հօրէն ձերմէ՝ որ յերկինսն է ։ Այլ յորժամ առնիցես ողորմութիւն, մի՛ հարկաներ փող առաջի քո, որպէս կեղծաւորքն առնեն ի ժողովուրդս և ի հրապարակս, որպէս զի փառաւորեսցին ի մարդկանէ ։ Ամէն ասեմ ձեզ՝ այն իսկ են վարձք նոցա ։ Այլ դու յորժամ ողորմութիւն առնիցես, մի՛ գիտասցէ ձախ քո զինչ գործէ աջ քո. որպէս զի եղիցի ողորմութիւնն քո ի ծածուկ, և Հայրն քո որ տեսանէ ի ծածուկ՝ հատուսցէ քեզ յայտնապէս ։ Եւ յորժամ յաղօթս կայցես, մի՛ լինիցիս որպէս կեղծաւորքն. զի սիրեն ի ժողովուրդս և յանկիւնս հրապարակաց կալ յաղօթս, որպէս զի երևեսցին մարդկան ։ Ամէն ասեմ ձեզ՝ այն իսկ են վարձք նոցա ։ Այլ դու յորժամ կայցես յաղօթս, մուտ ի սենեակ քո՛ և փակեա զդուրս քո, և կաց յաղօթս առ Հայր քո ի ծածուկ. և Հայրն քո որ տեսանէ ի ծածուկ, հատուսցէ քեզ յայտնապէս ։ Եւ յորժամ կայցէք յաղօթս, մի՛ շատախօսք լինիք իբրև զհեթանոսն. զի համարին թէ ի բազում խօսից իւրեանց լսելի լինիցին. արդ մի՛ նմանիցէք նոցա. զի գիտէ Հայրն ձեր զինչ պիտոյ է ձեզ, մինչչև ձեր խնդրեալ ինչ իցէ ի նմանէ ։ Եւ արդ այսպէս կացէք դուք յաղօթս. Հայր մեր որ յերկինս, սուրբ եղիցի անուն քո. եկեսցէ արքայութիւն քո. եղիցին կամք քո որպէս յերկինս և յերկրի. զհաց մեր հանապազորդ՝ տուր մեզ այսօր, և թող մեզ զպարտիս մեր, որպէս և մեք թողումք մերոց պարտապանաց, և մի՛ տանիր զմեզ ի փորձութիւն, այլ փրկեա զմեզ ի չարէն,

Digitized by Google

զի քո է արքայութիւն և զօրութիւն և փառք յաւիտեանս ամէն։ Զի եթէ թողուցուք մարդկան զյանցանս նոցա, թողցէ և ձեզ Հայրն ձեր երկնաւոր։ Ապա թէ ոչ թողուցուք մարդկան զյանցանս նոցա, և ոչ Հայրն ձեր թողցէ ձեզ զյանցանս ձեր։ Եւ յորժամ պահիցէք՝ մի՛ լինիք իբրև զկեղծաւորսն տրտմեալք, որ ապականեն զերեսս իւրեանց, որպէս զի երևեսցին մարդկան՝ թէ պահիցեն։ Ամէն ասեմ ձեզ, այն իսկ են վարձք նոցա։ Այլ դու՝ յորժամ պահիցես, օծ զգլուխ քո և լուա զերեսս քո, զի մի՛ երևեսցիս մարդկան իբրև զպահօղ, այլ Հօրն քում ի ծածուկ. և Հայրն քո որ տեսանէ ի ծածուկ, հատուսցէ քեզ։ Մի՛ գանձէք ձեզ գանձս յերկրի, ուր ցեց և ուտիճ ապականեն, և ուր գողք ական հատանեն և գողանան։ Այլ գանձեցէք ձեզ գանձս յերկինս, ուր ոչ ցեց և ոչ ուտիճ ապականեն, և ոչ գողք ական հատանեն և գողանան. զի ուր գանձք ձեր են, անդ և սիրտք ձեր եղիցին։ 21։

ՀԱՄԲԱՐՁԻ ԲԿ

Քրիստոս յարեաւ ի մեռելոց։ Բ. եղեւ փառն։ 36։

ՍԱՂ. ՃԾ. Օրհնեցէք զԱստուած ի սրբութեան։ 571։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մարկոսի։ Բ. 1։

Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի

Եւ մտեալ դարձեալ ի Կափառնաում՝ յետ աւուրց լուր եղև եթէ ի տան է, և ժողովեցան բազումք՝ մինչև տեղի ևս ոչ լինել և ոչ առ դրանն. և խօսէր նոցա զբանն։ Եւ գային առ նա՝ բերէին անդամալոյծ մի բարձեալ ի չորից։ Եւ իբրև ոչ կարէին մերձենալ առ նա յամբոխէ անտի, քակեցին զյարկն ուր էր Յիսուս, և բացեալ զառաստաղն՝ իջուցին զմահիճսն յորում կայր անդամալոյծն։ Եւ տեսեալ Յիսուսի զհաւատս նոցա, ասէ ցանդամալոյծն. որդեակ, թողեալ լիցին քեզ մեղք քո։ Եւ էին ոմանք ի դպրաց անտի՝ որ անդ նստէին, և խորհէին ի սիրտս իւրեանց. զի՞նչ է այս՝ որ խօսի սա զհայհոյութիւնս. ո՞վ կարէ թողուլ զմեղս, եթէ ոչ մի Աստուած։ Եւ գիտաց Յիսուս յոգի իւր՝ թէ այնպէս խորհէին ի սիրտս իւրեանց, և ասէ. զի՞ խորհիք զայդ ի սիրտս ձեր։ Զի՞նչ դիւրին է, ասել ցանդամալոյծն՝ թողեալ լիցին քեզ մեղք քո, եթէ ասել՝ արի առ զմահիճս

քո և երթ ի տուն քո։ Այլ զի գիտասջիք եթէ իշխանութիւն ունի որդի մարդոյ ի վերայ երկրի՝ թողուլ ըզմեղս, ասէ ցանդամալոյծն. քեզ ասեմ, արի ա՛ռ զմահիճս քո՛ և երթ ի տուն քո։ Եւ յարեաւ, և վաղվաղակի առեալ զմահիճն՝ ել առաջի ամենեցուն. մինչև զարմանալ ամենեցուն և փառաւոր առնել զԱստուած և ասել, թէ այսպիսի ինչ երբեք ոչ տեսաք։ 12։

Քարոզ. Խնդրեսցուք։ Կեցո։ Աղօթ. Թագաւոր։

---

# Բ · ՈՒՐԲԱԹ · ԳԶ

## ՑԱՐԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԱԿ

Անեղանելին Աստուած իջեր յերկնից ի յեղականս. եւ անճառելի ծածկմամբ տնօրինեցար յարգանդի կուսին արեգակն արդարութեան. ‖ օրհնեմք ըզքեզ Աստուած հարցըն մերոց։ Անմեկնելին ի Հօրէ եկիր կամաւ ի մահ խաչի. եւ ընդ չարագործսըն պատժեալ ի սպանող վարեցար այլ ի ծոցոյ Հօր ոչ բաժանեցար. օրհնեմք։ Անմահութեանց տուող Քրիստոս իջեր ի հող մահու. կատարելով զողբումըն հոգեւորգողին եդար ի գբի ներքնումն. այլ ակնարկելով քո ի դժոխս հանէր ըզկապեալսըն քաջութեամբ եւ որ նընջէին ի տապանս. օրհնեմք։

.Գ. ԸզՏէր ‖ օրհնեցէք եւ բարձր արարէք ըզդընա յաւիտեան։ Որ անապականն թաղմամբն ելոյծ զանէծս երկրի. իջանելով ի ստորինս ազատութիւն շնորհեաց նըստելոցն ի խաւարի. օրհնեցէք։ Որ կենաբեր յարութեամբն իւրով ազատեաց զադամեանս ի կեանս անմահ. եւ սուրբ մարմնով և արեամբըն հրաւիրեաց ըզմեզ յերկնից յարքայութիւնն. օրհնեցէք։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԱԿ

Որ զկեանքն անմահարար մահկանացու բնու։ 289։

Digitized by Google

ՈՂՈՐՄԵԱ ԱԿ

Եկիր ի տեսութիւն անտեսանելիդ Աստուած. եւ մարմին զգեցար ի սրբոյ կուսէն. ‖ կեցուցիչ եւ յոյս մեր կեցո զմեզ: Խաչի համբերեցեր վասն ազգի մարդկան. եւ մեռեալս չարչարեալ փրկեցեր ի մահուանէ. կեցուցիչ: Եղար ի գերեզմանի կեանք աշխարհի. եւ յարուցեալ յերրորդ աւուր զմարդիկ ի կեանս փոխեցեր. կեցուցիչ:

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԱԿ

Երգեսցուք քեզ ընդ հրեշտակս յաղթական օրհներգութիւն: Որ մահուամբ քո մեռուցեր զմահ. եւ յարութիւն պարգեւեցեր հողանիւթ բնութեանս. Երգեսցուք: Որ ցուցեր մեզ ճանապարհ նորոգման եւ մաքրեցեր զաղտեղութիւն յանցանացն զոր պատրեաց թշնամին. Երգեսցուք:

Կանխեցին կանայք իւղաբերք ի գերեզմանն. եւ տեսին զյարութիւնն Տեառն: Բացաւ դուռն յարութեան. գերեզմանին կենդանոյ լոյս ծագեաց տիեզերաց: Յարեաւ Տէրն ի մեռելոց. հզօր զօրութեամբ հաստատեաց զհիմունս եկեղեցւոյ սրբոյ:

ՍԱՂ. ՁԴ. Կ8. Ցոյց մեզ Տէր: փխ. Հանգեցար: 567:

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու: Ե. 27:

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ յետ այնորիկ ել անտի, եւ ետես մաքսաւոր մի որում անուն էր Ղեւի, զի նստէր ի մաքսաւորութեան. եւ ասէ ցնա. եկ զկնի իմ: Եւ թողեալ զամենայն՝ յարեաւ գնաց զկնի նորա: Եւ արար ընդունելութիւն մեծ նմա Ղեւի ի տան իւրում. եւ էր ժողովուրդ բազում մաքսաւորաց, եւ այլոց որ էին բազմեալ ընդ նոսա: Եւ տրտնջէին փարիսեցիքն եւ դպիրքն նոցա զնմանէ առ աշակերտսն նորա՝ եւ ասէին. ընդէ՞ր ընդ մաքսաւորս եւ ընդ մեղաւորս ուտէք եւ ըմպէք: Պատասխանի ետ Յիսուս եւ ասէ ցնոսա. ոչ ինչ են պիտոյ բժիշկք ողջոց, այլ հի-

* Տես ի Զեկուցումն, էջ Զ:

ւանդաց. ոչ եկի կոչել զարդարս, այլ զմեղաւորս յապաշխարութիւն։ Եւ նոքա ասեն ցնա. ընդէ՞ր աշակերտքն Յովհաննու պահեն ստէպ և խնդրուածս առնեն, նոյնպէս և փարիսեցւոցն, և քոյքդ ուտեն և ըմպեն։ Եւ նա ասէ ցնոսա. միթէ կարօ՞ղ էք մանկանց առագաստի, մինչ փեսայն ընդ նոսա իցէ, հրաման տալ պահել. եկեսցեն աւուրք՝ յորժամ բարձցի ի նոցանէ փեսայն, ապա պահեսցեն յաւուրսն յայնոսիկ։ Ասաց և առակ մի առ նոսա, թէ ոչ ոք արկանէ ի նոր հանդերձէ ի վերայ հնացեալ ձորձոյ. ապա թէ ոչ՝ և զնորն պատառէ, և ընդ հնոյն չմիաբանի կապերտն որ ի նորոյն։ Եւ ոչ ոք արկանէ գինի նոր ի տիկս հինս. ապա թէ ոչ՝ պայթուցանէ գինին նոր զտիկսն հինս. ինքն հեղու, և տիկքն կորնչին. այլ գինի նոր ի տիկս նորս արկանելի է, և երկոքին պահին։ Եւ ոչ ոք ըմպէ զհինն՝ և կամիցի ընդ նորն. քանզի ասէ՝ թէ հինն քաղցրագոյն է։ 39։

Քարոզ. Խնդրեսցուք։ Կեցո։ Աղօթ+. Քում ամենազօր։

---

Յ Ե Ր Ե Կ Ո Յ Ի Ն

ՍԱՂ. ԾԽԹ. Օրհնեցէք զՏէր յօրհնութիւն նոր։ 569։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի։ Զ. 22։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս ասէ.

Ճրագ մարմնոյ ակն է. եթէ ակն քո առատ է, ամենայն մարմինդ լուսաւոր եղիցի. ապա թէ ակն քո չար է՝ ամենայն մարմինդ խաւարին եղիցի։ Իսկ արդ եթէ լոյսդ որ ի քեզ է՝ խաւար է, խաւարն ո՞րչափ ևս։ Ոչ ոք կարէ երկուց տերանց ծառայել. կամ զմին ատիցէ և զմիւսն սիրիցէ, կամ զմին մեծարիցէ և զմիւսն արհամարհիցէ. ոչ կարէք Աստուծոյ ծառայել և մամոնայի։ Վասն այդորիկ ասեմ ձեզ. մի՛ հոգայք վասն ոգւոց ձերոց՝ զինչ ուտիցէք կամ զինչ ըմպիցէք, և մի՛ վասն մարմնոց ձերոց՝ թէ զինչ ագանիցիք. ո՞չ ապաքէն ոգի առաւել է քան զկերակուր՝ և մարմին քան զհանդերձ։ Հայեցարուք ի թռչունս երկնից՝ զի ոչ վարեն և ոչ հնձեն, և ոչ ժողովեն ի շտեմարանս, և Հայրն ձեր երկնաւոր կերակրէ զնոսա. ո՞չ ապաքէն դուք առաւել էք քան զնոսա։ Իսկ արդ ո՞ ի ձէնջ առ հոգալ իւրում՝ յաւելուլ կարիցէ ի հասակ իւր կանգուն մի։ Եւ վասն

Digitized by Google

հանդերձի զի՞ հոգայք. հայեցարուք ի շուշանն վայրենի՝ որպէս աճէ. ոչ ջանայ և ոչ նիւթէ. ասեմ ձեզ՝ զի և ո՛չ Սողոմոն յամենայն ի փառսն իւրում զգեցաւ իբրև զմի ի նոցանէ։ Իսկ եթէ զխոտն ի վայրի, որ այսօր է և վաղիւ ի հնոց արկանի, Աստուած այնպէս զգեցուցանէ, ո՞րչափ ևս առաւել զձեզ թերահաւատք։ Մի՛ այսուհետև հոգայցէք և ասիցէք. զի՞նչ կերիցուք կամ զի՞նչ արբցուք կամ զի՞նչ զգեցցուք. զի զայդ ամենայն հեթանոսք խնդրեն. քանզի գիտէ Հայրն ձեր երկնաւոր՝ թէ պիտոյ է ձեզ այդ ամենայն։ Խնդրեցէք նախ զարքայութիւն Աստուծոյ և զարդարութիւն նորա, և այդ ամենայն յաւելցի ձեզ։ Մի՛ այսուհետև հոգայցէք վասն վաղուի՝ զի վաղիւն վասն իւր հոգասցի. շատ է աւուրն չար իւր։ 34։

ՀԱՄԲԱՐՁԻ ԳԶ

Այսօր յարութիւն Քրիստոսի տօնեն։ Բ. Եղեւ փոխ.։ 39։

ՍԱՂ. ԾԾ. Օրհնեցէք զԱստուած ի սրբութեան։ 571։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մարկոսի։ Բ. 13։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ ել դարձեալ ի ծովեզրն, և ամենայն ժողովուրդն գայր առ նա, և ուսուցանէր զնոսա։ Եւ մինչ դեռ անցանէր, ետես զՂևի Ալփեայ՝ զի նստէր ի մաքսաւորութեան, և ասէ ցնա. եկ զկնի իմ։ Եւ յարուցեալ գնաց զկնի նորա։ Եւ եղև ի բազմելն նորա ի տան նորա, և բազում մաքսաւորք և մեղաւորք բազմեալ էին ընդ Յիսուսի և ընդ աշակերտսն նորա. քանզի էին բազումք՝ որ երթային զհետ նորա։ Իսկ դպիրքն և փարիսեցիք իբրև տեսին՝ թէ ուտէ ընդ մաքսաւորս և ընդ մեղաւորս, ասեն ցաշակերտսն նորա. զի՞ է՝ զի ընդ մեղաւորս և ընդ մաքսաւորս ուտէք և ըմպէք։ Իբրև լուաւ Յիսուս՝ ասէ ցնոսա. ոչ ինչ է պիտոյ բժիշկ ողջոց, այլ հիւանդաց, և ոչ եկի կոչել զարդարս՝ այլ զմեղաւորս։ Եւ էին աշակերտքն Յովհաննու և փարիսեցիքն ի պահս. գան և ասեն ցնա. ընդէ՞ր աշակերտքն Յովհաննու և փարիսեցիքն պահեն, և քո աշակերտքդ ոչ պահեն։ Եւ ասէ ցնոսա Յիսուս. միթէ մա՞րթ ինչ իցէ որդւոց առագաստի՝ մինչ ընդ նոսա իցէ փեսայն պահել. ցորքան ընդ իւրեանս ունիցին զփեսայն, ոչ է մարթ պահել. այլ

Digitized by Google

եկեսցեն աւուրք՝ յորժամ վերասցի ի նոցանէ փեսայն, և ապա պահեսցեն յաւուրն յայնմիկ։ Ոչ ոք կապերտ նոր անթափ արկանէ ի վերայ հնացեալ ձորձոյ. ապա թէ ոչ՝ առնու լրութեամբն իւրով նորն ի հնոյ անտի, և չար ևս պատառումն լինի։ Եւ ոչ ոք արկանէ գինի նոր ի տիկս հինս. ապա թէ ոչ՝ պայթուցանէ գինին զտիկսն, գինին հեղու և տիկքն կորնչին. այլ գինի նոր ի տիկս նորս արկանելի է։ 22։

Քարոզ. Խնդրեսցուք։ Կեցո։ Աղօթ. Թագաւոր։

---

# Բ. ՇԱԲԱԹ. ԳԿ

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

### ՀԱՐՑ ԲՁ

Որ ի յերկնից իջեր անըսկիզբն Աստուած Բան և լոյս. զքեզ ամենեքեան օրհնեսցուք. Աստուած հարցըն մերոց։ Որ ի խաչին բևեռեցար եւ հեղեր զարիւնդ ի փրկութիւն տիեզերաց. զքեզ։ Որ ի գերեզմանի եդար. եւ յարեար ի մեռելոց Քրիստոս յաւուր երրորդի. զքեզ։

Գ. Ըզտէր օրհնեցէք եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան։ Որ ի խաչին բևեռեցաւ եւ ի գործոց ձեռաց իւրոց ապտակեցաւ. եւ կերակուր ընկալաւ ըզլեղի. ամենայն արարածք գովելով բարձր արարէք ըզնա յաւիտեան։ 'սվամն որո ս սմ սյ արեգակըն խաւարեալ եւ ցելոյր վարագոյր տաճարին վերուստ ի վայր. վէմք պատառեալ երկիր շարժեալ ամենայն։ Թաղեցաւ ի մէջ երկրի. եւ ի յերրորդ աւուր յարեաւ աստուածապէս. եւ ի յերկինս համբարձաւ Աստուած ամենայն։

### ՄՆԾԱՑՈՒՍՑԷ ԲՁ

Սուրբ և Աստուածածին Մարիամ ցանկալի։ 225։

### ՈՂՈՐՄՆԱ ԲՁ

Իջեր յերկնից Որդի Աստուծոյ անզատեցեր զարա-

րածս. ա՛նկանիմ առա՛ջի՛ քո՛ ողորմեա՛ ինձ Աստուած.
Ի՛ խաչի՛ն բեւեռեցար Աստուած և ըզմարդն ի կապա-
նաց մահուն արձակեցեր. Եւ զիս մի անտես առներ.
որ մեղօք եմ մեռեալ: Ծագումըն Հօր յանմատոյց
լուսոյն որ իջեր ի գերեզման. կենդանացուցեր զա-
րարածըս քո. Եւ զիս մի անտես առներ. քանզի քեզ
միայնոյ մեղայ:

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԲՁ

Ի՛ գերեզման քո կանխեցին կանայքն զիւղս և
զխունկըս բերին. ի պատիւ թաղման քո. զի զմեղօք
ըղձողացեալըս վերածեր ի կեանս: Փոխանակ իւղոյն
զհաւատս անբիծս. և զաղաչանըս մեր ընդ առաւ-
տեան կանանցն ընկալ. որք զողջոյն կենաց լուան ե-
ւայի ունկամբն: Ետուն աւետիս առաքելոցն յարութեան
յարուցիչըն մեր. աւերեաց ըզդըժոխս. և զթըշնամին
կապեաց ի յանլոյծ կապանս:

ՍԱՂ. ՁԴ. Կ8. Ցոյց մեզ. Փխ. Հանեցար: 567:

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու: Զ. 1:
Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի

Եւ եղեւ ի շաբաթու յերկրորդում առաջնոյն՝ անցանել
նմա ընդ արտորայսն, և աշակերտքն նորա կորզէին
հասկ՝ շփէին ընդ ափ և ուտէին: Եւ ոմանք ի փարիսեց-
ւոցն ասեն ցնոսա. զի՞նչ գործէք՝ զոր չէ օրէն ի շաբա-
թու: Պատասխանի ետ նոցա Յիսուս և ասէ. չիցէ՞ ըն-
թերցեալ ձեր զոր արարն Դաւիթ, յորժամ քաղցեաւ
ինքն և որ ընդ նմայն էին. զիա՞րդ եմուտ նա ի տունն
Աստուծոյ, և զհացն զառաջաւորութեան եկեր՝ և ետ այ-
նոցիկ որ ընդ նմայն էին. զոր ոչ էր օրէն ումեք ու-
տել, բայց միայն քահանայապետացն: Եւ ասէ ցնոսա.
տէր է որդի մարդոյ և շաբաթու: Եւ եղեւ ի միւսում
շաբաթուն մտանել նմա ի ժողովուրդն և ուսուցանել. և
էր անդ այր մի, և ձեռն իւր աջ գօսացեալ էր: Եւ
սպասէին նմա դպիրքն և փարիսեցիք՝ թէ ի շաբաթու
բժշկիցէ, զի գտանիցեն չարախօսութիւն զնմանէ: Եւ

Digitized by Google

նա գիտէր զխորհուրդս նոցա. ասէ ցայրն՝ որոյ ձեռնն գօսացեալ էր. արի անց ի մէջ։ Եւ նա յարուցեալ եկաց։ Ասէ ցնոսա Յիսուս. հարցից ինչ զձեզ. զի՞նչ արժան է ի շաբաթու, բարի՞ ինչ առնել՝ եթէ չար գործել, ոգի՞ մի ապրեցուցանել՝ թէ կորուսանել։ Եւ հայեցեալ շուրջ զամենեքումբք զայրագին, ասէ ցնա. ձգեա զձեռն քո։ Եւ նա ձգեաց, և հաստատեցաւ ձեռն նորա իբրև զմիւսն։ Նոքա լցան յիմարութեամբ, և խօսէին ընդ միմեանս, թէ զի՞նչ առնիցեն Յիսուսի։ 11։

Քարոզ. Խնդրեսցուք։ Կեցո։ Աղօթ. Քում ամենազօր։

---

## ՅԵՐԵԿՈՅԻՆ

### *ՍԱՂՄՈՍ ԿԶ*

*Աստուած ողորմեա մեզ և օրհնեա զմեզ. երգ։* 563։

*Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի։ Է.* 1։

*Տէրն մեր Յիսուս Քրիստոս ասէ.*

*Մի՛ դատիք՝ զի մի՛ դատիցիք. զի որով դատաստանաւ դատիք՝ դատելոց էք, և որով չափով չափէք՝ չափեսցի ձեզ։ Զի՞ տեսանես զշիւղ յական եղբօր քո, և ի քում ական զգերանդ ոչ տեսանես. կամ զիա՞րդ ասես ցեղբայր քո, թող հանից զշիւղդ յականէ քումմէ. և ահաւադիկ ի քում ականդ գերան կայ։ Կեղծաւոր, հան նախ զգերանդ յականէ քումմէ, և ապա հայեսցիս հանել զշիւղն յականէ եղբօր քո։ Մի՛ տայք զսրբութիւն՝ շանց, և մի՛ արկանէք զմարգարիտ ձեր առաջի խոզաց, զի մի՛ առ ոտն կոխիցեն զնոսա, և դարձեալ երգիծուցանիցեն զձեզ։ Խնդրեցէք՝ և տացի ձեզ, հայցեցէք՝ և գտջիք, բախեցէք՝ և բացցի ձեզ. զի ամենայն որ խնդրէ՝ առնու, և որ հայցէ՝ գտանէ, և որ բախէ՝ բացցի նմա։ Ո՞ իցէ ի ձէնջ մարդ՝ ցոր խնդրիցէ որդի իւր հաց, միթէ քա՞ր տայցէ նմա. և կամ խնդրիցէ ձուկն, միթէ օ՞ձ տայցէ նմա։ Արդ եթէ դուք որ չարքդ էք՝ գիտէք պարգևս բարիս տալ որդւոց ձերոց, ո՞րչափ ևս առաւել Հայրն ձեր որ յերկինս է՝ տացէ բարիս այնոցիկ որ խնդրեն զնա։ Զամենայն զոր միանգամ կամիջիք՝ թէ արասցեն ձեզ մարդիկ՝ այնպէս և դուք արարէք նոցա. զի այս իսկ են օրէնքն և մարգարէք։ Մտէք ընդ նեղ*



Digitized by Google

դուռն. քանի՛ ընդարձակ է դուռնն և համարձակ ճանապարհն՝ որ տանի ի կորուստ, և բազումք են որ մտանեն ընդ նա. քանի՛ անձուկ է դուռնն և նեղ ճանապարհն՝ որ տանի ի կեանս, և սակաւք են որ գտանեն զնա: Զգոյշ լերուք ի սուտ մարգարէիցն՝ որ գան առ ձեզ հանդերձիւք ոչխարաց, և ի ներքոյ են գայլք յափշտակողք. ի պտղոյ նոցա ծանիջիք զնոսա: Միթէ քաղիցե՞ն ի փշոց խաղող կամ ի տատասկէ թուզ: Այպէս ամենայն ծառ բարի՝ պտուղ բարի առնէ, և ծառ չար՝ պտուղ չար առնէ: Ոչ կարէ ծառ բարի՝ պտուղ չար առնել, և ոչ ծառ չար՝ պտուղ բարի առնել: Ամենայն ծառ՝ որ ոչ առնէ պտուղ բարի, հատանի և ի հուր արկանի: Ապա ի պտղոյ նոցա ծանիջիք զնոսա: Ոչ ամենայն որ ասէ ցիս՝ Տէր Տէր, մտցէ յարքայութիւն երկնից. այլ որ առնէ զկամս Հօր իմոյ որ յերկինսն է: Բազումք ասիցեն ցիս յաւուրն յայնմիկ. Տէր Տէր՝ ոչ յանուն քո մարգարէացաք, և յանուն քո դևս հանաք, և յանուն քո զօրութիւնս բազումս արարաք. և յայնժամ ասացից ցնոսա՝ եթէ ոչ երբէք գիտէի զձեզ. ի բաց կացէք յինէն ամենեքեան՝ ոյք գործէիք զանօրէնութիւն: Ամենայն որ լսէ զբանս իմ զայսոսիկ և առնէ զսոսա, նըմանեսցէ առն իմաստնոյ՝ որ շինեաց զտուն իւր ի վերայ վիմի. իջին անձրևք՝ և խաղացին գետք, շնչեցին հողմք՝ և բախեցին զտունն, և ոչ կործանեցաւ, քանզի ի վերայ վիմի հաստատեալ էր: Եւ ամենայն որ լսէ զբանս իմ զայսոսիկ՝ և ոչ առնէ զսոսա, նմանեսցէ առն յիմարի, որ շինեաց զտուն իւր ի վերայ աւազոյ. իջին անձրևք, յարեան գետք, շնչեցին հողմք՝ հարին զտունն և անկաւ, և էր կործանումն նորա մեծ յոյժ: Եւ եղև իբրև կատարեաց Յիսուս զամենայն զբանս զայսոսիկ, զարմանային ժողովուրդքն ընդ վարդապետութիւն նորա. զի իբրև իշխանութեամբ ուսուցանէր, և ոչ որպէս դըպիրքն: Այլ իբրև էջ ի լեռնէ անտի, գնացին զկնի նորա ժողովուրդք բազումք: Եւ ահա մատուցեալ բորոտ մի, երկիր պագանէր նմա, և ասէր. Տէր, եթէ կամիս կարող ես զիս սրբել: Ձգեաց զձեռն իւր և հասոյց ի նա Յիսուս և ասէ. կամիմ՝ սրբեաց: Եւ վաղվաղակի սրբեցաւ ի նմանէ բորոտութիւնն: Եւ ասէ ցնա Յիսուս. զգոյշ լեր՝ մի՛ ումեք ասիցես. այլ երթ ցոյց

Digitized by Google

զանձն քո քահանային, և մատո զպատարագն զոր հրամայեաց Մովսէս՝ ի վկայութիւն նոցա։ Եւ մտեալ ի Կափառնաում, մատեաւ առ նա հարիւրապետ մի, աղաչէր զնա և ասէր՝. Տէր, մանուկ իմ անկեալ կայ ի տան անդամալոյծ՝ չարաչար տանջեալ։ Ասէ ցնա Յիսուս. ես եկից և բժշկեցից զնա։ Պատասխանի ետ հարիւրապետն և ասէ. Տէր, չեմ բաւական եթէ ընդ յարկաւ իմով մտցես. այլ ասա բանիւ, և բժշկեսցի մանուկն իմ. քանզի և ես այր մի եմ ընդ իշխանութեամբ, ունիմ ընդ ինև զինուորս. ասեմ սմա երթ՝. և երթայ, և այլում թէ եկ՝ և գայ, և ծառայի իմում թէ արա զայս՝ և առնէ։ Իբրև լուաւ Յիսուս՝ զարմացաւ, և ասէ ցայնոսիկ՝ որ զհետն երթային. ամէն ասեմ ձեզ և ոչ յԻսրայելի այսպիսի հաւատս գտի երբեք։ Բայց ասեմ ձեզ, զի բազումք յարևելից և յարևմտից եկեսցեն՝ և բազմեսցին ընդ Աբրահամու և ընդ Սահակայ և ընդ Յակովբու յարքայութեան երկնից, և որդիքն արքայութեան ելցեն ի խաւարն արտաքին. անդ եղիցի լալ և կրճել ատամանց։ Եւ ասէ Յիսուս ցհարիւրապետն. երթ՝ և որպէս հաւատացերդ եղիցի քեզ։ Եւ ողջացաւ մանուկն նորա յաւուր յայնմիկ։ Եւ եկեալ Յիսուս ի տուն Պետրոսի, ետես զի զոքանչն նորա անկեալ դնէր տապացեալ. կալաւ զձեռանէ նորա՝ և եթող զնա ջերմն. յոտն եկաց և պաշտէր զնոսա։ Իբրև եղև երեկոյ՝ մատուցին առ նա դիւահարս բազումս, և եհան զայսսն բանիւ և զամենայն հիւանդսն բժշկեաց։ Զի լցցի բանն՝ որ ասացաւ ի ձեռն Եսայեայ մարգարէի. Նա զհիւանդութիւնս մեր վերացոյց, և զցաւս մեր եբարձ։ Ը. 17։

ՄՆՍՆԴԻ

Օրհնեալ որ գաս յանուն Տեառն, օրհնեալ որ գալոց ես։

Տէր Աստուած մեր երևեցաւ մեզ. արարէք տօնս ուրախութեան կանխաւ մինչև յանկիւնս սեղանոյ։

ՀԱՄԲԱՐՁԻ ԴԶ

Թագաւոր գոլով քո յաշխարհ. մտեր ի քաղաքն։ 309։

ՍԱՂ. Զ. Ցնծացէք առ Աստուած օգնական է։ 457։

Digitized by Google

Սրբոյ Աւետարանին որ ըստ Մարկոսի։ Բ. 23։

Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի

Եւ եղև (Նմա) ի շաբաթու անցանել ընդ արտորայս, և աշակերտքն ի գնալն իւրեանց սկսան հասկ կորզել և ուտել։ Եւ փարիսեցիքն ասեն ցնա. տես զի՞նչ գործեն աշակերտքն քո ի շաբաթուս զոր չէ արժան։ Եւ ասէ ցնոսա Յիսուս. ո՞չ երբեք իցէ ընթերցեալ ձեր՝ զոր արարն Դաւիթ, յորժամ պիտոյն եղև, և քաղցեաւ նա՛ և որ ընդ նմայն էին. զիա՞րդ եմուտ ի տունն Աստուծոյ առ Աբիաթարաւ քահանայապետիւ, և զհացսն զառաջաւորութեան եկեր՝ և ետ և այնոցիկ որ ընդ նմայն էին. զոր ոչ էր օրէն ուտել, բայց միայն քահանայիցն։ Եւ ասէ ցնոսա. շաբաթ վասն մարդոյ եղև, և ոչ եթէ մարդ վասն շաբաթու, ապա ուրեմն տէր է որդի մարդոյ՝ և շաբաթու։ Եւ եմուտ միւսանգամ ի ժողովուրդըն. և էր անդ այր մի՝ որոյ ձեռն իւր գօսացեալ էր։ Եւ սպասէին նմա՝ եթէ բժշկեսցէ զնա ի շաբաթուն, զի չարախօսեսցեն զնմանէ։ Եւ ասէ ցայրն՝ որոյ ձեռնն գօսացեալ էր. արի անց ի մէջ։ Եւ ասէ ցնոսա. զի՞նչ արժան է ի շաբաթու, բարի՞ ինչ գործել՝ եթէ չար առնել, ոգի՞ մի ապրեցուցանել՝ եթէ կորուսանել։ Եւ նոքա լռեցին։ Եւ հայեցեալ Յիսուսի զնոքօք լի ցասմամբ, տրտմեալ վասն կուրութեան սրտից նոցա, ասէ ցայրն. ձգեա զձեռն քո։ Եւ նա ձգեաց, և ողջացաւ ձեռն նորա։ Գ. 5։

Քարոզ. Խնդրեսցուք։ Կեցո։ Աղօթ. Թագաւոր։

---

## Գ. ԿԻՐԱԿԷ. ԴՋ

### ԱՇԽԱՐՀԱՄԱՏՐԱՆ

### ՅԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԳՋ

Երկըրպագեմք քեզ Քրիստոս որ ի ձեռըն սըրբոց առաքելոցըն ծանուցար մեզ. ‖ Տէր Աստուած հարցըն մերոց։ Եւ աշակերտեալք ի սըրբոց առաքելոցն. ուսաք փառաւորել ըզքեզ ի տաճարի սըրբութեան քո.

զոր հիմնեցուցեր ի վերայ վիմի հաւատոյ. Տէր: Եկայք ժողովուրդք որք ի հեթանոսաց. ցընծութեամբ տօնեսցուք զնաւակատիս սուրբ եկեղեցւոյ. բարեբանելով ըզՏէր:

Գ. ԸզՏէր օրհնեցէք || և առաւել բարձր արարէք ըզնա յաւիտեան: Ընդ անմարմնական բազմութիւնս ըզՔրիստոս թագաւորն. որ եկաւորէ այսօր ի սուրբ եկեղեցի. ամենայն ազինք գովեցէք և: Եկայք հաւատացեալք սուրբ Երրորդութեանն յեկեղեցիս օրհնեցէք զԱստուած. արարէք տօնս ուրախութեան մինչև յանկիւնըս սեղանոյ և առաւել:

ՄԵԾԱՑՈՒՑԷ ԳՁ

Աստուածածին երկնային դուռն աստուածային: 379:

Գէշէրէ, Գօլաթեան տաւ. Դասք լուսեղէն:

ՈՂՈՐՄԵԱ ԳՁ

Այսօր հրեշտակաց բազմութիւնքըն տօնակից լինին ընդ մեզ. քանզի երկնաւոր թագաւորն եկաւորէ ի սուրբ եկեղեցի: Խընդա և ցուարճացիր հաւատացեալդ յԱստուծոյ եկեղեցի. քանզի ըզքեզ Տէրըն տերանց ընտրեաց և հաճեցաւ բնակել ի քեզ: Լուսաւորեա լուսաւորեա կաթողիկէ եկեղեցի. քանզի ի քեզ շող աստուածեղէն ի Հօրէ լուսոյ ծագեաց. և լուսաւորեաց ըզմանկունըս քո:

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԳՁ

Որք արժանաւորեցայք ի կոչումըն փառաւորութեան Քրիստոսի Աստուծոյ մերոյ. եկայք ժողովուրդք երգեցէք Տեառն երգ նոր. երգեցէք զանուն նորա ձայնիւ ցընծութեամբ յօրհնութիւն ի նոր: Զօրացեալքս ի քեզ Քրիստոս ժողովուրդք հաւատացելոց. ճըշմարիտ խոստովանութեամբ օրհնեմք զխորհուրդ աստուածային

կենսաբեր տընօրէնութեան քո. փառաւորեմք զանձ-
ւոր և ըզսքանչելի անուն քո. Տէր Տէր է մեր ի
վերայ ամենայն երկրի: Որպէս լեր եկեղեցի սուրբ.
հարսն երկնաւոր խորհրդոյն ի փառս ամենասուրբ
Երրորդութեանն. որ համագոյ իշխանութեամբն ի-
րով. զարդարեաց ծագմամբ լուսոյ պըսակէս զքեզ. ի
պատուածն ամենայն սըրբովք իւրովք:

Ձայնի Սուրբ Աստուածին Մող. փրկել: Քող. Վասն լսե-
լի: Քահ. Օրհնութիւն: Եւ եկեալն խաչն և [illegible]
և ամենայն [illegible] է [illegible], [illegible]

ՇԱՐԱԿԱՆ ԵԿԵՂԵՑԻՈՅ. ԳՁ

Որպէս լեր սուրբ եկեղեցի. քանզի Քրիստոս արքայն երկնից. այսօր պըսակեաց ըզքեզ խաչիւն իւրով. և զարդարեաց զամուրըս քո սքանչելի փառօքն իւրովք: Խընդա յոյժ դուստր Սիոնի. քանզի երկիրս երկինք եղեն. այսօր վերըստին քո նորոգմամբ. և թագաւոր երկնաւոր հաճեցաւ բընակիլ ի քեզ: Ընդ դասս երկնաւոր զօրացըն վերառեալ տօնեմըք քեզ այսօր զանդադար փառաւորութիւնս. որպէս լեր հարսն անարատ անքըննելին քո խորհըրդով:

Ձայնի ՍԱՂՄՈՍ ԿԷ. Է Բեկ.

ԿՑ. Յեկեղեցիս օրհնեցէք զԱստուած. և զՏէր յաղբերացն Իսրայելի:

Փխ. Յարիցէ Աստուած և ցրուեսցին ամենայն: 293:

ԸՆԹԵՐՑՈՒԱԾ յԱռակաց: Գ. 9:

Պատուեա զՏէր ի քոց արդար վաստակոց, և հան նմա պտուղ ի քոց արդարութեան արմտեաց. զի լցցին շտեմարանք քո լիութեամբ ցորենոյ, և գինեաւ հնձանք քո առաւել եռ բղխեսցեն: Որդեակ, մի՛ լքանիր ի խրատու Տեառն, և մի՛ լուծանիր յանդիմանեալ ի նմանէ: Զի զոր սիրէ Տէր՝ խրատէ, տանջէ զամենայն որդի զոր ընդունի: Երանեալ է այր որ եգիտ զիմաստութիւն, և մահկանացու՝ որ ետես զհանճար: Զի լաւ է զվաճառ

զայն գտանել՝ քան զգանձս ոսկւոյ և արծաթոյ։ Պատուականագոյն է քան զականս պատուականս, և ոչ ինչ է չար որ հակառակ կայցէ նմա։ Յայտնի է ամենեցուն որ մերձին ի նա, և ամենայն ինչ որ պատուական է՝ չարժէ զնա։ Զի երկայնաւուրք և ամք կենաց յաջմէ իւրմէ, և յահեկէ իւրմէ փառք և մեծութիւն։ Ի բերանոյ նորա բղխէ արդարութիւն, զօրէնս և զողորմութիւն ի լեզուի իւրում կրէ։ Ճանապարհք նորա ճանապարհք բարեաց, և ամենայն շաւիղք նորա խաղաղութեամբ։ 18։

Ընթերցուած յեսայեայ մարգարէէ։ կԶ. 12։

Զի այսպէս ասէ Տէր. ահաւասիկ ես դարձուցանեմ ի դոսա իբրև զգետ զխաղաղութիւն. և իբրև զհեղեղատ յորդեալ՝ զփառս հեթանոսաց. զմանկունս դոցա ի վերայ ուսոց իւրեանց բարձեալ բերիցեն, և ի վերայ ծնգաց իւրեանց գգուիցեն. որպէս մայր զմանուկ իւր գըգուիցէ, այնպէս գգուեցից զձեզ. և յԵրուսաղէմ մխիթարեսջիք, և տեսջիք և խնդասցեն սիրտք ձեր, և ոսկերք ձեր իբրև զդալարի զուարճասցին. և ծանիցի ձեռըն Տեառն երկիւղածաց իւրոց, և սպառնասցի անհաւատից։ Զի ահաւասիկ Տէր իբրև զհուր եկեսցէ, և կառք նորա իբրև զմրրիկ հատուցանել սրտմտութեամբ զհատուցումն իւր, և բոցով հրոյ զարհամարհանս իւր։ 15։

Պօղոսի առաքելոյն ի Տիմոթէոսի առաջին թղթոյն է ընթերցուածս։ Գ. 14։

Զայս գրեմ առ քեզ, զի ակն ունիմ ի մօտոյ գալ. ապա թէ յամեցից, զի գիտասցես՝ թէ որպէս պարտ իցէ քեզ ի տան Աստուծոյ շրջել, որ է եկեղեցի Աստուծոյ կենդանւոյ, սիւն և հաստատութիւն ճշմարտութեան։ 16։

Ձայնն Ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա։

Հիմունք նորա ի լեառն սուրբ նորա, սիրէ Տէր զդրունս Սիօնի քան զամենայն յարկսն Յակովբայ։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի։ ԺԶ. 13։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ եկեալ (Յիսուս) ի կողմանս Փիլիպպեայ Կեսարեայն՝ հարցանէր զաշակերտսն և ասէր. զո՞ ոք ասեն զինէն մարդիկն՝ թէ իցէ որդի մարդոյ։ Եւ նոքա ասեն. ոմն

Digitized by Google

զՅովհաննէս Մկրտիչ, և այլք զԵղիա, և կէսք զԵրեմիա, կամ զմի ոք ի մարգարէիցն։ Ասէ ցնոսա Յիսուս. իսկ դուք զո՞ ոք ասէք զինէն թէ իցեմ։ Պատասխանի ետ Սիմովն Պետրոս և ասէ. դու ես Քրիստոսն Որդի Աստուծոյ կենդանւոյ։ Պատասխանի ետ Յիսուս և ասէ ցնա. երանի քեզ Սիմովն՝ որդի Յովնանու, զի մարմին և արիւն ոչ յայտնեաց քեզ, այլ Հայր իմ որ յերկինս է։ Եւ ես քեզ ասեմ, զի դու ես վէմ, և ի վերայ այդր վիմի շինեցից զեկեղեցի իմ, և դրունք դժոխոց զնա մի՛ յաղթահարեսցեն։ Եւ տաց քեզ զփականս արքայութեան երկնից. և զոր միանգամ կապեսցես յերկրի՝ եղիցի կապեալ յերկինս, և զոր արձակեսցես յերկրի՝ եղիցի արձակեալ յերկինս։ 19։

Եւ [illegible] [illegible], և [illegible] [illegible] [illegible]։ Ար- Քար. Սուրբ խաչիւս։ Աչ. Պահպանեա։ Եւ է [illegible] [illegible].

ՍԱՂ. ՁԴ. կՑ. Ցոյց մեզ։ փխ. Հաճեցար։ 567։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու։ Զ. 12։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ եղև ընդ աւուրսն ընդ այնոսիկ ել ի լեառն։ 223։

Երգ. Նորաստեղծ։ Քար. Խնդր։ Կեցո։ Աչ. Քում ամե։

---

ՅԵՐԵԿՈՑԻՆ

ՍԱՂ. ճխթ. Օրհնեցէք զՏէր յօրհնութիւն։ 569։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի։ Ը. 18։

Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի

Տեսեալ (Յիսուսի) ժողովուրդս բազումս զիւրև, հրամայեաց երթալ յայն կոյս։ Եւ մատուցեալ դպիր մի ասէ ցնա. վարդապետ, եկից և ես զկնի քո յոր վայր և երթիցես։ Ասէ ցնա Յիսուս. աղուեսուց որջք գոն, և թռչնոց երկնից բոյնք. այլ որդւոյ մարդոյ ոչ գոյ՝ ուր դիցէ զգլուխ իւր։ Եւ մի ոմն յաշակերտաց Նորա ասէ ցնա. Տէր, տուր ինձ հրաման՝ զի երթայց նախ թաղեցից զհայր իմ։ Ասէ ցնա Յիսուս. եկ զկնի իմ, և թող տուր մեռելոցն թաղել զմեռեալս իւրեանց։ Եւ իբրև եմուտ ի նաւն, գնացին զկնի Նորա աշակերտքն Նորա. և

ահա շարժումն մեծ եղև ի ծովուն՝ մինչ նաւին ծածկել յալեաց անտի, և ինքն ննջէր։ Եւ մատուցեալ աշակերտքն յարուցին զնա և ասեն. Տէր փրկեա զմեզ՝ զի կորնչիմք։ Եւ ասէ ցնոսա. ընդէ՞ր վատասիրտք էք սակաւահաւատք։ Յայնժամ յարուցեալ սաստեաց հողմոցն և ծովուն, և եղև խաղաղութիւն մեծ։ Եւ մարդիկն զարմացան և ասէին. որպիսի՛ ոք իցէ սա, զի և հողմք և ծով հնազանդին սմա։ Եւ իբրև անցին յայնկոյս յերկիրն Գերգեսացւոց, պատահեցին նմա դիւահարք երկու՝ ելեալք ի գերեզմանացն՝ չարաչարք յոյժ. որպէս զի չէր հնար անցանել ումեք ընդ այն ճանապարհ։ Եւ ահա աղաղակեցին և ասեն. զի՞ կայ մեր և քո, Յիսուս Որդի Աստուծոյ, եկիր տարաժամ տանջել զմեզ։ Եւ էր հեռագոյն ի նոցանէ երամակ մի խոզից արօտական։ Եւ դևքն աղաչէին զնա և ասէին. եթէ հանես զմեզ աստի, հրաման տուր մեզ երթալ յերամակ խոզիցն։ Եւ ասէ ցնոսա. երթայք։ Եւ նոքա ելեալ գնացին յերամակն խոզից. և դիմեաց ամենայն երամակն ի դարէ անտի ի ծով, և մեռան ի ջուրսն։ Եւ խոզարածքն փախեան, և երթեալ ի քաղաքն պատմեցին զամենայն, և զիրս դիւահարացն։ Եւ ահա ամենայն քաղաքն ել ընդ առաջ Յիսուսի. իբրև տեսին զնա՝ աղաչեցին զի գնասցէ ի սահմանաց նոցա։ Եւ մտեալ ի նաւ անց յայնկոյս, և եկն ի քաղաք իւր։ Եւ ահա մատուցին առ նա անդամալոյծ մի որ դնէր ի մահիճս. և տեսեալ Յիսուսի զհաւատս նոցա՝ ասէ ցանդամալոյծն. թողեալ լիցին քեզ մեղք քո։ Եւ ահա ոմանք ի դպրացն ասեն ընդ միտս. հայհոյէ դա։ Եւ ծանուցեալ Յիսուսի զխորհուրդս նոցա՝ ասէ ցնոսա. ընդէ՞ր խորհիք դուք չարիս ի սիրտս ձեր. զի՞նչ դիւրին է. ասել՝ թողեա՜լ լիցին քեզ մեղք քո, թէ ասել՝ արի և շրջեաց։ Այլ զի գիտասջիք՝ եթէ իշխանութիւն ունի որդի մարդոյ յերկրի թողուլ զմեղս, յայնժամ ասէ ցանդամալոյծն. արի՛ առ զմահիճս քո՝ և երթ ի տուն քո։ Եւ յարուցեալ գնաց ի տուն իւր։ Իբրև տեսին ժողովուրդքն, զարմացան. և փառաւոր առնէին զԱստուած զտուիչն այնպիսի իշխանութեան՝ մարդկան։ Թ. 8։

ՀԱՄԲԱՐՁԻ ԴՁ

**Փառաբանակից Հօր Որդի որ։ Ա. Բ. [illegible]։ 44։**

ՍԱՂ. ԾԾ. Օրհնեցէք զԱստուած ի սրբութեան։ 57]։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մարկոսի։ Գ. 6։

Վասն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի

Եւ ելեալ արտաքս վաղվաղակի փարիսեցիքն հերովդիանոսօքն հանդերձ, խորհուրդ առնէին վասն Նորա՝ թէ զիարդ կորուսցեն զնա։ Իսկ Յիսուս աշակերտօքն իւրովք գնաց ի ծովեզրն։ Եւ բազում ժողովուրդ ի Գալիլեացւոց երթային զհետ Նորա, և ի Հրէաստանէ և յԵրուսաղեմէ, և յայնկոյս Յորդանանու, և որք ի Տիւրոսէ և ի Սիդոնէ. բազում ժողովուրդ իբրև լսէին որչափ ինչ առնէր, գային առ Նա։ Եւ ասէ ցաշակերտսն իւր, զի նաւակ մի պատրաստական կայցէ Նմա վասն ամբոխին՝ զի մի՛ նեղեսցեն զնա. քանզի զբազումս բժշկեաց. մինչ գալ խռնել զնովաւ՝ զի մերձեսցին առ Նա որք ունէին ախտս ինչ։ Եւ այսք պիղծք յորժամ տեսանէին զնա, անկանէին առաջի Նորա, աղաղակէին և ասէին. թէ դու ես Որդի Աստուծոյ. և Նա յոյժ սաստէր նոցա, զի մի՛ յայտնի առնիցեն զնա։ 12։

Քարոզ. Խնդրեսցուք։ Կեցո։ Աղօթ. Թագաւոր։

---

# Գ. ԵՐԿՈՒՇԱԲԱԹԻ. ԴԿ

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԲԶ

Անապական Բանդ Աստուած. որ իջեր ի մէջ հնոցին. փրկեցեր զերիս մանկունսն ցօղով օրհնութեան. ‖ օրհնեալ ես Տէր Աստուած։ Որ ի բարբառոյն ըզբոց հրոյն չիջուցեր. եւ զմանկունսն ապրեցուցեր. եւ նոքա երեքեանըն զովէին ասելով. օրհնեալ։ Որ յորդանոյն կուսէն բնակեցար. եւ ծընար որպէս մանուկ. որ ըզմահ կախեցեր և զյարութիւն քո ցուցեր. օրհնեալ։

Գ. ԸզՏէր ‖ օրհնեցէք եւ բարձր արարէք յաւիտեան։ Զանըսկիզբըն զամենասուրբ զերրորդութիւնն. որ նոյն ինքն իւր անեղ բընութեամբըն գո-

Digitized by Google

յացոյց յոչընչէ զամենայն արարածս. ընդ նմա հոգեւոր երգով օրհնեցէք։ Զհամագոյական էութեան Բանն ի Հօրէ. որ լոյս մեծ ծագեաց անճառելի ծագմամբ որ հաստատեաց զերկինս եւ զիմանալի զօրըս հրեշտակաց. ընդ նմա հոգեւոր երգով օրհնեցէք. Զանմահ զերկնաւոր զթագաւորութիւնն. որ արարչագործ ստեղծմամբ վայելչացոյց զերկինս եւ զերկիր. ի փառս ամենասուրբ Երրորդութեանն երեքսրբեան հրեշտակային օրհնութեամբ. ընդ նմա հոգեւոր երգով օրհնեցէք։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԲՁ

Ընդ քեզ կոյս և մայր և բնակարան աստուածային ներմարդութեանն. գոհաբանեմք և վերօրհնեմք զեղեալ փրկող կենդանութեան ազգի մարդկան. ‖ վասն որոյ ընդ քեզ Աստուածածին և կոյս. բարեբանեմք ըզմայր և զաղախին Փրկչին մերոյ։ Ծնունդըն Հօր և հինաւուրց անժամանակին յաւիտենից. ժամանակաւ յորովայնի քում բնակեցաւ և ի Հօրէ ոչ մեկնեցաւ. վասն որոյ։ Ծնեալն ի քէն ի խաչ ելեալ եւ ի յաթոռ փառաց ընդ Հօր. անարգեալ ի մարդկանէ փառաւորութեամբ էութեամբ երկրրպագեալ. վասն որոյ։ Ընդ քեզ ոչ միայն որդիք մարդկան այլ եւ վերին զօրութիւնք. դասք անմարմնոց հոգեղինաց հրեղինաց զուարթնոց եւ հրեշտակաց. գոհաբանեն և վերօրհնեն եւ փառաւորեն ըզմայր և զաղախին Փրկչին մերոյ։

ՈՂՈՐՄԵԱ ԲՁ

Առաջին պտուղ առաջին ծառոյն ըզնախաստեղծըն մահացոյց. իսկ Որդին միածին եկն եւ փրկեաց ըզմեզ։ Զչարչարանս ի յանձն առեր ըզխաչին յարուցիչըդ մեռելոց. ջնջեա ըզձեռագիր իմոյ յանցանաց։

կենդանութիւն ի գերեզմանի եդար վասն ի հողոյ ստեղծեալ մարդոյն. զմեղօք մեռեալ զանձն իմ կենդանացո։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԲԶ

Եկին ի գերեզմանն առաւօտեան սուրբ կանայքն. յօծանել խնկել զանապական մարմինն։ Գտին մերձ հրեշտակին քաղցրալերէր ըզնոսա ասելով. ցնծացէք յարեաւ որպէս յառաջն ասաց։ Ելեալ ի հրեշտակէն զաւետիս յարութեանն. պատմէին աշակերտացն եթէ յարեաւ Քրիստոս։

ՍԱՂ. ՁԴ. ԿՑ. Ցոյց մեզ։ Փխ. Հաճեցար։ 567։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու։ Է. 1։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ իբրեւ կատարեաց զամենայն բանս իւր ի լսելիս ժողովրդեանն, եմուտ ի Կափառնաում։ Հարիւրապետի ուրումն ծառայ չարաչար հիւանդացեալ՝ մերձ էր ի վախճանել, որ էր նմա պատուական։ Իբրեւ լուաւ զՅիսուսէ, առաքեաց զծերսն ի Հրէից՝ աղաչել զնա՝ զի եկեալ ապրեցուսցէ զծառայն նորա։ Եւ նոքա եկեալ առ Յիսուս՝ աղաչէին զնա ստէպ եւ ասէին, թէ արժանի է որում զշնորհս զայս առնես. զի սիրէ զազգս մեր, եւ զժողովրդանոցն նա շինեաց մեզ։ Եւ Յիսուս գնաց ընդ նոսա. իբրեւ ոչինչ կարի հեռի էր ի տանէն, յղեաց առ նա հարիւրապետն բարեկամս եւ ասէ ցնա. Տէր, մի ինչ աշխատ լինիր, զի չեմ բաւական եթէ ընդ յարկաւ իմով մտանիցես. վասն որոյ եւ ոչ զանձն համարեցայ արժանի առ քեզ գալոյ. այլ ասա բանիւ՝ եւ բժշկեսցի մանուկս իմ. քանզի եւ ես այր մի եմ՝ կարգեալ ընդ իշխանութեամբ, ունիմ ընդ ինեւ զինուորս. եւ ասեմ սմա՝ երթ, եւ երթայ. եւ այլում՝ թէ եկ, եւ գայ. եւ ծառային իմում՝ թէ արա զայս, եւ առնէ։ Եւ իբրեւ լուաւ զայս Յիսուս՝ զարմացաւ, դարձաւ առ ժողովուրդն որ երթային զհետ նորա եւ ասէ. ամէն ասեմ ձեզ, թէ եւ ոչ յԻսրայէլի այսչափ հաւատս գտի։ Եւ դարձան անդրէն պատգամաւորքն ի տուն, եւ գտին զծառայն հիւանդ՝ բժշկեալ։ 10։

Digitized by Google

Քարոզ. Խնդրեսցուք ։ Կեցո ։ Աղօթ. Քում ամենազօր ։

---

## Յ Ե Ր Ե Կ Ո Յ Ի Ն

ՍԱՂ. ԾԽԹ. Օրհնեցէք զՏէր յօրհնութիւն ։ 569 ։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի ։ Թ. 9 ։

Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի

Եւ անցեալ ընդ այն (Յիսուսի) ետես այր մի զի նըստէր ի մաքսաւորութեան, Մատթէոս անուն. և ասէ ցնա. եկ զկնի իմ ։ Եւ յարուցեալ գնաց զկնի Նորա ։ Եւ եղև իբրև բազմեալ էր Նա ի տանն, և ահա բազում մաքսաւորք և մեղաւորք եկեալ և բազմեալ էին ընդ Յիսուսի և ընդ աշակերտս Նորա ։ Իբրև տեսին փարիսեցիքն՝ ասեն ցաշակերտս Նորա. ընդէ՞ր ընդ մաքսաւորս և ընդ մեղաւորս ուտէ վարդապետն ձեր ։ Իսկ Յիսուս իբրև լուաւ՝ ասէ ցնոսա. ոչ է պիտոյ բժիշկ կարողաց՝ այլ հիւանդաց ։ Երթայք ուսարուք՝ զի՞նչ է՝ զողորմութիւն կամիմ, և ոչ զզոհ. զի ոչ եկի կոչել զարդարս՝ այլ զմեղաւորս ։ Յայնժամ մատեան առ Նա աշակերտքն Յովհաննու և ասեն. ընդէ՞ր մեք և փարիսեցիքն պահեմք յաճախ, և քո աշակերտքդ ոչ պահեն ։ Ասէ ցնոսա Յիսուս. միթէ մա՞րթ ինչ իցէ մանկանց առագաստի սուգ առնուլ՝ մինչ փեսայն ընդ Նոսա իցէ. այլ եկեսցեն աւուրք՝ յորժամ բարձցի ի Նոցանէ փեսայն, և ապա պահեսցեն ։ Ոչ ոք արկանէ կապերտ անթափ ի վերայ հնացեալ ձորձոյ. զի առնու ելանէ զլրութիւն Նորա ի հանդերձէն, և ևս չար պատառումն լինի ։ Եւ ոչ արկանեն գինի Նոր ի տիկս հինս. ապա թէ ոչ՝ տիկքն պատառին, և գինին հեղու և տիկքն կորնչին. այլ արկանեն գինի Նոր ի տիկս Նորս, և երկոքին պահին ։ 17 ։

### ՀԱՄԲԱՐՁԻ ԴԿ

Էջ հրեշտակն յերկնից աւետաւոր ։ Բ. Երեք տուն ։ 48 ։

ՍԱՂ. ԾԾ. Օրհնեցէք զԱստուած ի սրբութեան ։ 571 ։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մարկոսի ։ Գ. 13 ։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Ելանէ ի լեառն՝ և կոչէ առ ինքն զորս ինքն կամեցաւ, և չոգան առ Նա ։ Եւ արար երկոտասանս՝ զի ի-

Digitized by Google

ցեն զնովաւ, և զի առաքեսցէ զնոսա քարոզել, և ու-
նել իշխանութիւն բժշկելոյ զցաւս և հանելոյ զդևս։ Եւ
եդ անուն Սիմովնի՝ Պետրոս. և Յակովբու Զեբեդեայ և
Յովհաննու եղբօրն Յակովբայ՝ եդ նոցա անուանս Բա-
ներեգէս, որ է՝ որդիք որոտման, և զԱնդրէաս և զՓի-
լիպպոս և զԲարթուղիմէոս և զՄատթէոս զմաքսաւորն,
և զԹովմաս և զՅակովբոս Ալփեայ, և զԹադէոս, և ըզ-
Սիմովն Կանանացի, և զՅուդա Սկարիովտացի, որ և մատ-
նեացն զնա։ 19։

Քարոզ. Խնդրեսցուք։ Կեցո։ Աղօթք. Թագաւոր։

---

# Գ. ԵՐԵՔՇԱԲԱԹԻ. ԱՁ

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

### ՀԱՐՑ ԲՁ

Որ թագաւորդ ես յաւիտենից Տէր և արարիչ ա-
մենայն լինելութեան. Օրհնեալ ես Տէր Աստուա-
ծ հարցըն մերոց։ Որ սպասաւորեալդ ես ի սե-
րովբէից. եւ փառաւորեալ յանմարմնական բազըմու-
թեանց. այսօր ի դահճացըն մերկացեալ և ի զինուո-
րաց բաժանեցար վասըն մերոյ փըրկութեան. Օր-
հնեալ։ Այսօր ըզկենարարըն մեր սուրբ ըզխաչըն օր-
հնեսցուք. քանզի ի վերայ նորա բաշխեցաւ մեզ պար-
գեւք անմահութեան. Տէր Աստուած։

Գ. ԸզՏէր Օրհնեցէք. Եւ բարձր արարէք
ըզնա յաւիտեան։ Այսօր նըշան սուրբ խաչին է
յերկրի երեւեալ. Օրհ։ Այսօր ընդդէմ թըշ-
նամւոյն. զէն անպարտելի ցուցաւ մեզ. Օրհ։

### ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԲՁ

Զքեզ Հայր յառաջ քան զյաւիտեանս բարեբա։ 341։

### ՈՂՈՐՄԵԱ ԲՁ

Որ կամաւոր խաչելութեամբ քո Տէր բարձեր ըզ-
մեղս. Ըզքեզ բարեբանեմք ամենեցուն յարութիւն։
Որ երեքօրեայ թաղմամբ քո Տէր մեռուցեր ըզմահ։

ըզքեզ։ Որ լուսափայլ յարութեամբ քո Տէր կենագործեցեր զաշխարհս. ըզքեզ։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԲՁ

Զայն աւետաւոր հրեշտակին զուարճացոյց զառաւօտեան կանանցն. զՔրիստոսի պատմելով ըզյարութիւնն։ Մեք յուսահատիք տրտմութեամբ այլ ցնծացէք բերկրելով. խընկազգեացք աստուածայնոյն և փափագողք յարութեանն։ Փութացարուք ի Գալիլեա աւետարանեցէք աշակերտացն. եթէ յարեաւ Քրիստոս եւ խափանեաց ըզմահ։

ՍԱՂ. ՁԴ. ԿՑ. Ցոյց մեզ. փխ. Հանեցար։ 567։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու։ Է. 11։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ եղև ի վաղիւն երթայր ի քաղաք մի, որում անուն էր Նային. երթային ընդ նմա և աշակերտքն նորա, և ժողովուրդ բազում։ Իբրև մերձ եղև ի դուռն քաղաքին, և ահա ելանէր մեռեալ մի, որդի միամօր մօր իւրոյ, և նա էր այրի. և ժողովուրդ բազում քաղաքին էր ընդ նմա։ Իբրև ետես զնա Տէր՝ գթացաւ ի նա և ասէ. մի՛ լար։ Եւ մատուցեալ մերձեցաւ ի դագաղն. և որք բարձեալն տանէին՝ զտեղի առին. և ասէ. պատանի դու, քեզ ասեմ, արի։ Կանգնեցաւ և նստաւ մեռեալն, և սկսաւ խօսել։ Եւ ետ զնա ցմայր իւր. և ահ կալաւ զամենեսին, և փառաւոր առնէին զԱստուած՝ և ասէին, թէ մարգարէ ոմն մեծ յարուցեալ է ի միջի մերում, և թէ այց արար Աստուած ժողովրդեան իւրում ի բարութիւն։ Եւ ել զրոյցս այս ընդ ամենայն Հրէաստան վասն նորա, և ընդ ամենայն կողմանս աշխարհին։ Եւ պատմեցին Յովհաննու աշակերտքն իւր վասն ամենայնի այսորիկ։ Եւ կոչեաց առ ինքն երկուս ոմանս յաշակերտաց իւրոց Յովհաննէս, առաքեաց առ Տէր և ասէ. դո՞ւ ես որ գալոցն ես, եթէ այլում ակն կալցուք։ Եւ եկեալ առ նա արքն՝ ասեն. Յովհաննէս Մկրտիչ առաքեաց զմեզ առ քեզ՝ և ասէ. դո՞ւ ես որ գալոցն ես, եթէ այլում ակն կալցուք։ Եւ ի նմին ժամու բժշկեաց

Digitized by Google

զբաղումն ի հիւանդութեանց և ի հարուածոց և յայսոց
չարաց, և կուրաց բազմաց շնորհեաց տեսանել։ Պա-
տասխանի ետ նոցա և ասէ. երթայք պատմեցէք Յով-
հաննու՝ զոր տեսէքդ և լուայք. զի կոյրք տեսանեն և
կաղք գնան, բորոտք սրբին, խուլք լսեն, մեռեալք
յառնեն, աղքատք աւետարանին. և երանի իցէ՝ որ ոչ
գայթագղեսցէ յիս։ Եւ իբրև գնացին հրեշտակքն Յով-
հաննու, սկսաւ խօսել ընդ ժողովուրդսն վասն Յովհան-
նու. զի՞նչ ելէք յանապատն տեսանել. եղէ՞գն շարժուն
ի հողմոյ։ Այլ զի՞նչ ելէք տեսանել. ա՞յր ի հանդերձս
փափկութեան զարդարեալ. ահաւասիկ՝ որ ի հանդերձս
երևելիս և ի փափկութեան են՝ յարքունիս են։ Այլ զի՞նչ
ելէք տեսանել. մարգարէ՞. այո, ասեմ ձեզ՝ առաւել ես
քան զմարգարէ. զի սա է՝ վասն որոյ գրեալն է, թէ
ահա առաքեմ զհրեշտակ իմ առաջի քո՝ որ յարդարեսցէ
զճանապարհ քո առաջի քո։ Ամէն ասեմ ձեզ, մեծ ի
ծնունդս կանանց մարգարէ քան զՅովհաննէս ոչ ոք է,
բայց փոքրիկն յարքայութեան Աստուծոյ մեծ է քան ըզ-
նա։ Եւ ամենայն ժողովուրդն իբրև լուաւ՝ և մաքսա-
ւորքն, արդարացուցին զԱստուած, զի մկրտեցան ի մը-
կըրտութիւնն Յովհաննու։ Իսկ փարիսեցիքն և օրինա-
կանքն զխորհուրդն Աստուծոյ անարգեցին յանձինս իւ-
րեանց, զի ոչ մկրտեցան ի նմանէ։ Արդ ո՞ւմ նմանե-
ցուցից զմարդիկ ազգիս այսորիկ, և ո՞ւմ իցեն նմանօղք.
նման են մանկտւոյ որ ի հրապարակս նստիցին, կարդայ-
ցեն զմիմեանս և ասիցեն. փողս հարաք ձեզ՝ և ոչ կա-
քաւեցէք, ողբացաք՝ և ոչ լացէք։ Եկն Յովհաննէս Մը-
կըրտիչ՝ ոչ ուտէր և ոչ ըմպէր, և ասէիք՝ դև գոյ ի նը-
մա։ Եկն որդի մարդոյ՝ ուտէ և ըմպէ, և ասէք. ահա
այր կերող և արբեցող, բարեկամ մաքսաւորաց և մե-
ղաւորաց։ Եւ արդարացաւ իմաստութիւն յորդւոց իւ-
րոց։ 35։

Քարոզ. Խնդրեսցուք։ Կեցո։ Աղօթք. Քում ամենազօր։

---

## Ց Ե Ր Ե Կ Ո Յ Ի Ն

ՍԱՂ. ծխթ. Օրհնեցէք զՏէր յօրհնութիւն նոր։ 569։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի։ Թ. 18։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Մինչդեռ (նա) զայս խօսէր ընդ նոսա ահա իշխան մի

մատուցեալ երկիր պագանէր նմա և ասէր. դուստր իմ արդ ևս վախճանեցաւ. այլ եկեալ դիցես զձեռն քո ի վերայ նորա և կեցցէ։ Յարեաւ Յիսուս և գնաց զկնի նորա աշակերտօքն հանդերձ։ Եւ ահա կին մի տեռատես երկոտասանամեայ, մատուցեալ յետոյ մերձեցաւ ի դրօշակ հանդերձի նորա. քանզի ասէր ի մտի իւրում, թէ միայն մերձենամ ի հանդերձս նորա՝ փրկիմ։ Իսկ Յիսուս իբրև դարձաւ և ետես զնա, ասէ. քաջալերեաց դուստր, հաւատք քո կեցուցին զքեզ։ Եւ փրկեցաւ կինըն ի ժամէն յայնմանէ։ Իբրև եկն Յիսուս ի տուն իշխանին, և ետես զփողարսն և ամբոխ յոյժ, ասէ ցնոսա. ի բաց գնացէք. զի ոչ եթէ մեռեալ է աղջիկդ՝ այլ ննջէ։ Եւ ծաղր առնէին զնա։ Եւ իբրև ել ամբոխն ի բաց, եմուտ՝ կալաւ զձեռանէ նորա, և յարեաւ աղջիկն։ Եւ ել համբաւս այս ընդ ամենայն երկիրն ընդ այն։ 26։

ՀԱՄԲԱՐՁԻ ԱՁ

Ընդ կանայսն իւղաբերսն առ։ Գ. Էջէք տուն։ 28։

ՍԱՂ. ԾԾ. Օրհնեցէք զԱստուած ի սրբութեան։ 571։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մարկոսի։ Գ. 20։

Տերամբ մերով Յիսուսիւ Քրիստոսիւ

Գան ի տուն, և գայ միւսանգամ ընդ նոսա ժողովուրդըն, մինչ զի և հաց ևս ոչ ժամանել ուտել նոցա։ Եւ իբրև լուան որ իւրքն էին՝ ելին ունել զնա, զի համարէին թէ մոլեգնեալ իցէ։ Եւ դպիրքն՝ որ յԵրուսաղեմէ իջեալ էին, ասէին թէ բէեղզեբուղ գոյ ի դմա, և իշխանաւ դիւացն հանէ դա զդևս։ Եւ կոչեցեալ զնոսա առ ինքն, առակօք խօսէր ընդ նոսա. զիա՞րդ կարէ սատանայ զսատանայ հանել. և արդ եթէ թագաւորութիւն յանձն իւր բաժանեսցի, ոչ կարէ կալ թագաւորութիւնըն այն. և եթէ տուն յանձն իւր բաժանեսցի, ոչ կարէ կալ տունն։ Եւ եթէ սատանայ ի վերայ անձին իւրոյ յարեաւ՝ և բաժանեալ իցէ, ոչ կարէ կալ, այլ վախճանեալ է։ Այլ ոչ ոք կարէ զկարասի հզօրի մտեալ ի տուն նորա աւար հարկանել, եթէ ոչ նախ զհզօրն կապիցէ, և ապա զտուն նորա աւար հարկանիցէ։ Ամէն ասեմ ձեզ, զի ամենայն թողցի որդւոց մարդկան մեղք և հայհոյութիւնք՝ որչափ և հայհոյեսցեն, բայց որ հայհոյեսցէ զհոգին սուրբ, ոչ ունիցի թողութիւն յաւիտեան,



Digitized by Google

*այլ պարտական լիցի յաւիտենից մեղաց ։ Զի ասէին՝ թէ այս պիղծ գոյ ի նմա ։ 30 ։*

**Քարոզ. Խնդրեսցուք ։ Կեցո ։ Աղօթ. Թագաւոր ։**

---

# Գ. ՉՈՐԵՔՇԱԲԱԹԻ. ԱԿ

## Ց Ա Ռ Ա Ւ Օ Տ Ո Ւ

### ՀԱՐՑ ԲՁ

*Այսօր բեւեռեալ քո ի խաչին. եւ զինուորըն խոցեալ զանարատ ըզկողդ ‖ Տէր Աստուած հարցըն մերոց ։ Իսկ բղխումըն սուրբ արեան քո լըւաց ըզպատուիրազանցըս յանիծիցն Ադամայ. Տէր ։ Պարգեւատու բարեաց եւ տուող ողորմութեան. եդար ի գերեզմանի. Տէր ։*

*Գ. ԸստՏէր ‖ Ամենայն գործք օրհնեցէք ։ Որ յանէից գոյացոյց արարողն իւր կերպամամբ. զգաստացեալ օրհնաբանիչք եղաք. ամենայն ։ Որ զգատակնիք միահու եւ լոյծ. իւրով անշընչացեալ մարմնովն ըղձողացեալ մարդոյն. ամենայն ։ Որ զանաւշնաճաշակըն քաղցրացուցոյց. ճաշակմամբ դառնութեանն. զի հաղորդեսցուք մարմնոյ եւ արեանն Տեառն. ամենայն ։*

### ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԲՁ

*Բանն առաքեալ ի Հօրէ որ վասըն մեր մարմնացաւ. եւ ցընծութիւն աշխարհի յայտնեցաւ. ‖ Ընդ քեզ բարեբանեմք Աստուածածին կոյս ։ Զի որում ոչըն հանդուրժէին բոցանըշոյլ սերովբէքն. նա բնակեցաւ ի քում յորովայնի. ընդ քեզ ։ Յորժամ սարսեալ դողային փայլականացայտ ի լուսոյն. ի գիրկըս քո ըզնա ընկալար. ընդ քեզ ։*

### ՈՂՈՐՄԵԱ ԲՁ

*Հայր անըսկիզբըն. որ վերօրհնեալդ ես ի դասուց քե-*

Digitized by Google

րովբէից. ընդ քեզ աղաչեմք || ողորմեա քոյոց հաւատացելոց։ Բանդ ի Հօրէ որ յառաջ քան զյաւիտեանս Որդի. փառակից Հօր. ողորմեա։ Որ նըստիս ի քրովբէս եւ տեսչութեամբ խնամես զարարածըս քո. ճըշմարիտ սուրբ Հոգի ողորմեա։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԲՋ

Այսօր զուարճացան տիեզերք ամենայն. ճըշմարիտ յարութեամբ Աստուածորդւոյն. քանզի զդըժոխս աւերեաց եւ գերեաց զարգելեալս ի նմա։ Այսօր լուսափայլեալ մեծապայծառ ծագմամբ հրեշտակապետն ի վերայ վիմին. կանանցն աւետէր ասելով. զի խընդրէք ըզկենդանին ընդ մեռեալս։ Այսօր բերկրեցան կանայքն իւղաբերք. աւետեօք յարութեամբ Աստուածորդւոյն. դարձան յառաքեալսն ասելով. յարեաւ Աստուած։

ՍԱՂ. ՁԴ. կՑ. Ցոյց մեզ։ փխ. Հանեցար։ 567։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու։ Ի. 36։

ԶՏէրն մեր Յիսուս Քրիստոս

Աղաչէր (զնա) ոմն ի փարիսեցւոցն՝ զի կերիցէ։ 417։

Քարոզ. Խնդրեսցուք։ Կեցո։ Աղօթք. Քում ամենազօր։

---

ՑԵՐԵԿՈՅԻՆ

ՍԱՂ. ծԽԹ. Օրհնեցէք զՏէր յօրհնութիւն նոր։ 569։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի։ Թ. 27։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ մինչդեռ անցանէր ընդ այն (Յիսուս), զհետ եղեն նորա կոյրք երկու, աղաղակէին և ասէին. ողորմեաց մեզ, որդի Դաւթի։ Եւ իբրև եկն ի տուն, մատեան առ նա կոյրքն։ Եւ ասէ ցնոսա Յիսուս. հաւատայք՝ եթէ կարող եմ առնել ձեզ զայդ։ Ասեն ցնա. այո Տէր։ Յայնժամ մերձեցաւ յաչս նոցա և ասէ. ըստ հաւատոց ձերոց եղիցի ձեզ։ Եւ բացան աչք նոցա. և սաստեաց նոցա Յիսուս և ասէ. զգոյշ կացէք՝ մի՛ ոք գիտասցէ։

Digitized by Google

Եւ նոքա ելեալ համբաւեցին զնա ընդ ամենայն երկիր ընդ այն ։ Եւ յելանելն նոցա արտաքս, ահա մատուցին առ նա այր մի համր դիւահար, և յելանել դիւին՝ խօսեցաւ համրն ։ Եւ զարմացան ժողովուրդքն և ասեն. թէ և ոչ երբեք երևեցաւ այսպիսի ինչ յԻսրայէլի ։ Իսկ փարիսեցիքն ասէին, թէ իշխանաւ դիւաց հանէ զդևս ։ 34 ։

ՀԱՄԲԱՐՁԻ ԱԿ

Աքանչելի հրեշտակն Տեառն ։ Գ. չորս ձայն ։ 30 ։

ՍԱՂ. ԾԾ. Օրհնեցէք զԱստուած ի սրբութեան ։ 571 ։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մարկոսի ։ Գ. 31 ։

Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի

Գան եղբարքն և մայր (Նորա) և արտաքոյ կացեալ յղեցին և կոչէին զնա ։ Եւ անդ ժողովուրդն շուրջ զնովաւ նստէր. և իբրև ասացին ցնա. ահաւասիկ մայր քո և եղբարք քո կան արտաքոյ, և խնդրեն զքեզ. պատասխանի ետ նոցա և ասէ. ո՞վ է իմ մայր կամ եղբարք ։ Հայեցաւ շուրջ զիւրև յաշակերտսն զի նստէին, և ասէ. ահաւասիկ մայր իմ և եղբարք իմ. զի որ առնէ զկամս Աստուծոյ, նա է իմ եղբայր և քոյր և մայր ։ 35 ։

Քարոզ. Խնդրեսցուք ։ Կեցո ։ Աղօթք. Թագաւոր ։

---

# Գ. ՀԻՆԳՇԱԲԱԹԻ. ԲՁ

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

### ՀԱՐՑ ԲՁ

Որ զըթացար ի սուրբ մանկունս եւ իջեալ փրկեցեր ի բորբոքեալ բոցոյն. ‖ Ըզքեզ միշտ օրհնեմք Աստուած հարցըն մերոց ։ Որ ողորմեցար ազգի մարդկան եւ իջեալ մարմնացար ի սուրբ կուսէն. ըզքեզ ։ Որ երեքօրեայ թաղմամբ քո Տէր շարժեցան հիմունք երկրի. ըզգերեզմանս բացեր ըզմեռեալսըն յարուցեր. ըզքեզ ։

Գ. Ն՛ցէք Որ պայծառացոյց ըզփայտ խաչին. տարածանելով զիւր զանարատ բազուկսն. եւ ետ զէն

յաղթութեան արարածոց իւրոց ‖ ամենայն գործք օրհնեցէք ։ Իջանելով ի ստորին կողմ երկրի և դողալով սասանեցան դըժոխք․ քանզի որ ի նմա արգելեալքն աղաղակէին առ Տէր ամենայն ։ Եւ զարգելեալսն ի բռնութենէ մահու ազատեցոյց երեքօրեայ յարութեամբն իւրով ամենայն ։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԲՁ

Զկուսութիւնդ քո Աստուածածին անարատ ։ 303 ։

ՈՂՈՐՄԵԱ ԲՁ

Որ խաչեցար և թաղեցար վասն մերոյ փրկութեան եւ յարեար ի մեռելոց․ ‖ խնայեա ի ժողովուրդս քո միայն մարդասէր ։ Որ ըզդըժոխս աւերեցեր և ըզգերեալսն փրկեցեր եւ մեզ կեանս շնորհեցեր․ խնայեա ։ Որ ի յերկինս համբարձար եւ ընդ աջմէ Հօր նստար․ ի միւսանգամ քո գալստեանն․ խնայեա ։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԲՁ

Սքանչելի կանայքն աներկիւղ եկին ի տեսանել ըզգերեզմանն․ զի կատարեալ սէրըն մերժեաց զերկիւղն ։ Եկին ի խընկել ըզտէրունեան մարմինն․ եւ տեսին յարուցեալ ի գերեզմանէն․ եւ վերըստին լոյսըն ծագեաց յաշխարհս ։ Քարոզեաց հրեշտակըն զյարութիւնըն Տեառն․ եւ բացան գերեզմանըք նընջեցելոց․ եւ յարութիւն Տեառն յաղթեաց մահու ։

ՍԱՂ․ ՁԴ․ կԸ․ Ցոյց մեզ Տէր ։ Փխ․ Հաճեցար ։ 567 ։

Սրբոյ Աւետարանին որ ըստ Ղուկասու ։ Ը․ 1 ։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ եղև յետ այնորիկ՝ և ինքն շրջէր ընդ քաղաքս և ընդ գեօղս, քարոզէր և աւետարանէր զարքայութիւն Աստուծոյ, և երկոտասանքն ընդ նմա, և կանայք ոմանք՝ որ բժշկեալ էին յայսոց չարաց և ի հիւանդու-

Digitized by Google

թեանց. Մարիամ՝ որ կոչէր Մագդաղենացի, յորմէ եօթըն դեւն ելեալ էր. և Յովհաննա կին Քուզայ հազարապետին Հերովդի, և Շուշան, և այլք բազումք որք պաշտէին զնա յընչից իւրեանց։ Եւ ի ժողովել բազում ժողովրդոց, և ըստ քաղաքաց քաղաքաց եկելոցն առ նա, ասէ առակաւ. Ել սերմանացան սերմանել զսերմանս իւր. և ի սերմանելն իւրում՝ էր որ անկաւ առ ճանապարհաւ և եղև կոխան, և թռչունք երկնից կերան զնա։ Եւ այլն անկաւ յապառաժի, և ընդ բուսանելն՝ չորացաւ առ ի չգոյէ հիւթոյ։ Եւ այլն անկաւ ի մէջ փշոց, և ընդ նմին բուսեալ փշոցն՝ հեղձուցին զնա։ Եւ այլն անկաւ յերկիր բարի և պարարտ, և բուսեալ արար պտուղ հարիւրապատիկ։ Զայս իբրև խօսեցաւ, ասէ. որ ունիցի ականջս լսելոյ՝ լուիցէ։ Հարցանէին զնա աշակերտքըն՝ թէ զի՞նչ իցէ առակն։ Եւ նա ասէ. ձեզ տուեալ է գիտել զխորհուրդս արքայութեան Աստուծոյ, բայց այլոցն առակօք, զի տեսցեն՝ և մի՛ տեսցեն, և լուիցեն՝ և մի՛ իմասցին։ Բայց առակն այս ինչ է. սերմն՝ բանն Աստուծոյ է. և որք առ ճանապարհաւն, այնոքիկ են որ լսենն, և ապա գայ սատանայ՝ հանէ զբանն ի սրտից նոցա, զի մի՛ հաւատասցեն և ապրեսցին։ Եւ որք յապառաժին, որք յորժամ լսիցեն՝ խնդութեամբ ընդունին զբանն, և արմատս ոչ ունիցին. որք առ ժամանակ մի հաւատան, և ի ժամանակի փորձութեան հեռանան։ Իսկ որ ի մէջ փշոցն անկաւ՝ նոքա են, որ իբրև լսեն զբանն՝ և ի հոգս և ի մեծութիւն և ի ցանկութիւն աշխարհիս զբաղեալ՝ հեղձնուն և անպտուղ լինին։ Իսկ որ յերկիրըն պարարտ, որոց բարւոք և զուարթագին սրտիւ լուեալ զբանն՝ ընդունին, և տան պտուղ համբերութեամբ։ Ոչ ոք լուցանէ ճրագ և թաքուցանէ ընդ կարասեաւ, կամ դնէ ընդ մահճօք. այլ ի վերայ աշտանակի դնէ, զի որ մտանեն՝ զլոյս տեսցեն։ Զի ոչ ինչ ծածուկ՝ որ ոչ յայտ լիցի, և ոչ գաղտնի՝ որ ոչ ծանիցի և եկեսցէ ի յայտ։ Տեսէք այսուհետև զիարդ լսէքդ. զի ոյր գուցէ՝ տացի նմա, և ոյր ոչն գուցէ՝ և զոր կարծէն թէ ունիցի՝ բարձցի ի նմանէ։ Եկին առ նա մայրն և եղբարք իւր, և ոչ կարէին հասանել ի նա վասն բազմութեանն։ Ազդ եղև նմա և ասեն. մայր քո և եղբարք քո կան արտաքոյ՝ և կամին զքեզ տեսանել։ Եւ ասէ

Digitized by Google

ցնոսա. մայր իմ և եղբարք իմ սոքա են, որ զբանն Աս-տուծոյ լսեն և առնեն ։ 21 ։

Քարոզ. խնդրեսցուք ։ Կեցո ։ Աղօթք. Քում ամենազօր ։

---

## Յ Ե Ր Ե Կ Ո Յ Ի Ն

ՍԱՂ. ՃԽԹ. Օրհնեցէք զՏէր յօրհնութիւն նոր ։ 569 ։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի ։ Թ. 35 ։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ շրջէր (Յիսուս) ընդ ամենայն քաղաքս և ընդ գեօղս, ուսուցանէր ի ժողովուրդս նոցա, և քարոզէր զաւետարանն արքայութեան, և բժշկէր զամենայն ախտս և զամենայն հիւանդութիւնս ի ժողովրդեանն ։ Եւ տեսեալ զժողովուրդսն՝ գթացաւ ի նոսա, զի էին աշխատեալք և ցրուեալք իբրև զոչխարս՝ որոց ոչ իցէ հովիւ ։ Յայնժամ ասէ ցաշակերտս իւր. հունձք բազում են՝ և մշակք սակաւ. արդ աղաչեցէք զտէր հնձոց՝ զի հանցէ մշակս ի հունձս իւր ։ Եւ կոչեցեալ առ ինքն զերկոտասանեսին աշակերտսն իւր, ետ նոցա իշխանութիւն այսոց պղծոց հանել զնոսա, և բժշկել զամենայն ցաւս և զամենայն հիւանդութիւնս ։ Եւ առաքելոցն երկոտասանից էին անուանք այսոքիկ. առաջին, Սիմովն՝ անուանեալն Պետրոս, և Անդրէաս եղբայր նորա, Յակովբոս Զեբեդեայ և Յովհաննէս եղբայր նորա. Փիլիպպոս և Բարթողիմէոս, Թովմաս և Մատթէոս մաքսաւոր, Յակովբոս Ալփեայ և Ղեբէոս՝ որ անուանեցաւն Թադէոս, Սիմովն Կանանացի, և Յուդայ Սկարիովտացի՝ որ և մատնեացն զնա ։ Զնոսա երկոտասանեսին առաքեաց Յիսուս, պատուիրեաց նոցա և ասէ. ի ճանապարհ հեթանոսաց մի՛ երթայցէք, և ի քաղաք Սամարացւոց մի՛ մըտանիցէք. այլ երթայք առաւել առ ոչխարսն կորուսեալս տանն Իսրայելի ։ Եւ իբրև երթայցէք՝ քարոզեցէք և ասացէք, թէ մերձեալ է արքայութիւն երկնից ։ Զհիւանդս բժշկեցէք, զբորոտս սրբեցէք, զդևս հանէք. ձրի առէք՝ և ձրի տուք ։ Մի՛ստանայք ոսկի և մի՛ արծաթ և մի՛ պղինձ ի գօտիս ձեր, մի՛ պարկ ի ճանապարհ, և մի՛ երկուս հանդերձս, մի՛ կօշիկս, մի՛ ցուպ. զի արժանի է մշակն կերակրոյ իւրում ։ Յոր քաղաք մտանիցէք կամ ի գեօղ, հարցանիցէք թէ ո՞ է ի նմա արժա-

նի . և անդ լինիջիք մինչև ելանիցէք անտի ։ Եւ իբրև մտանիցէք ի տունն, ողջոյն տայջիք նմա՝ և ասասջիք . ողջոյն տանս այսմիկ . եթէ իցէ տունն արժանի, եկեսցէ ողջոյնն ձեր ի վերայ նորա . ապա թէ ոչ իցէ արժանի, ողջոյնն ձեր առ ձեզ դարձցի ։ Եւ որ ոչ ընկալցի զձեզ և ոչ լուիցէ բանից ձերոց, իբրև ելանիցէք ի տանէն՝ կամ ի քաղաքէն յայնմանէ, թօթափեսջիք զփոշին յոտից ձերոց ։ Ամէն ասեմ ձեզ՝ դիւրագոյն լիցի երկրին Սոդոմացւոց և Գոմորացւոց յաւուրն դատաստանի, քան քաղաքին այնմիկ ։ Ժ . 15 ։

ՀԱՄԲԱՐՁԻ ԲՁ

Ձայն աւետաւոր Հրեշտակին ։ Գ . Երգ. տուն ։ 33 ։

ՍԱՂ . ԾԾ . Օրհնեցէք զԱստուած ի սրբութեան ։ 571 ։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մարկոսի ։ Դ . 1 ։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Դարձեալ սկսաւ ուսուցանել առ ծովեզերբն . և խռնեցան զնովաւ ժողովուրդք բազումք, մինչև ի նաւ մտանել նմա և նստել ի ծովուն . և ամենայն ժողովուրդըն զծովեզերբն՝ զցամաքն ունէին . և ուսուցանէր զնոսա առակօք բազում ինչ ։ Եւ ասէր նոցա ի վարդապետութեան իւրում . լուէ՛ք, ահաւասիկ ել սերմանօղ սերմանել . և եղև ի սերմանելն, ոմն անկաւ առ ճանապարհաւ, և եկն թռչուն և եկեր զնա ։ Եւ այլն անկաւ յապառաժի՝ ուր ոչ գոյր հող բազում . և վաղվաղակի բուսաւ, քանզի ոչ գոյր հիւթ երկրին, և յորժամ ծագեաց արև՝ ջեռաւ, և զի ոչ գոյին արմատք՝ ցամաքեցաւ ։ Եւ այլն անկաւ ի մէջ փշոց . ելին փուշքն և հեղձուցին զնա, և պտուղ ոչ ետ ։ Եւ այլն անկաւ յերկիր բարւոք, և ելեալ աճեցեալ տայր պտուղ, և բերէր ընդ միոյ երեսուն, և ընդ միոյ վաթսուն, և ընդ միոյ հարիւր ։ Եւ ասէր . որ ունիցի ականջս լսելոյ՝ լուիցէ ։ 9 ։

Քարոզ . Խնդրեսցուք ։ Կեցո ։ Աղօթ. . Թագաւոր ։

---

# Գ . ՈՒՐԲԱԹ . ԲԿ

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԲՁ

Ո՛ր զա՛րդա՛րեալ նորա՜ցո՛ւցեր զա՛րարածո՛ց գոյացու-

թիւնս համագոյ Հօր և Հոգւոյն. || Ըզքեզ միշտ օրհնեմք Աստուած հարցըն մերոց: Որ կամաւոր խոնարհութեամբըդ քո յանձն առեր ըզչարչարանս ի խաչին բեւեռեցար. Ըզքեզ: Որ զմահացու մեր բընութիւնս վերաստեղծեր կենդանութեամբ հրաշափառ քո յարութեամբըդ. Ըզքեզ:

Գ. Ըզտէր || Օրհնեցէք գովեցէք և բարձր արարէք ըզնա յաւիտեան: Որ էջն ի գերեզմանն եւ աւերեաց ըզդըժոխս մեծ եւ հըզօր զօրութեամբ եւ յարեաւ ի մեռելոց. Օրհնեցէք: Լուսաւորիչն աշխարհի որ ազատեաց ի մեղաց ըզտիեզերս ամենայն. Նորահրաշ յարութեամբն իւրով. Օրհնեցէք:

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԲՁ

Զքեզ ամենօրհնեալ Աստուածածին. մայրդ: 135:

ՈՂՈՐՄԵԱ ԲՁ

Եկեր ի չարչարանըս չարչարանացըն լուծիչ. բեւեռեցար ի խաչին. լուծեր ըզկապանըս մեղաց մերոց. || Քրիստոս յոյս յարութեան մերոյ ողորմեա: Իջեր ի գերեզման աւերեցեր ըզդըժոխս եւ յարուցեալ յերրորդ աւուր զաշխարհըս լըցուցեր խընդութեամբ. Քրիստոս: Մըտեր առ աշակերտսըն քաջալերել ըզնոսա. եւ խոստացար լինել ընդ մեզ զամենայն աւուրըս կենաց մերոց. Քրիստոս:

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԲՁ

Կանխելով սուրբ կանանցն ընդ առաւօտն ի գերեզմանն. եւ զահաւոր յարութեան ըզձայն ի հրեշտակէն լըսեալ || Երթէ յարեաւ Աստուած: Թողեալ ըզտըրտմութիւն երջանիկ և սուրբ կանանցն. եւ խընդութեամբ ընթանային պատմել աշակերտացն Երթէ: Զսքանչելի և զհրաշագործ ըզյարութիւնըն Քրիստոսի. առաքելոցն բատուգամպէս տեսեալ ընդհանուր քարոզէին Երթէ:

Digitized by Google

ՍԱՂ · ՁԴ · Կ8 · Ցոյց մեզ ։ Փխ · Հանեցար ։ 567 ։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու ։ Ը · 22 ։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ եղեւ ի միում աւուրց՝ ինքն ել ի նաւ և աշակերտքն նորա, և ասէ ցնոսա. եկայք անցցուք յայնկոյս ծովակիս. և գնացին ։ Եւ մինչդեռ նաւէին՝ ի քուն եմուտ, և էջ մրրիկ հողմոյ ի ծովակն՝ և ուռնոյր, և տագնապէին ։ Մատուցեալ զարթուցին զնա և ասեն. վարդապետ վարդապետ, կորնչիմք աւասիկ ։ Եւ նա յարուցեալ սաստեաց հողմոյն և խռովութեան ջրոցն, և հանդարտեցին և եղեւ խաղաղութիւն ։ Ասէ ցնոսա. ո՞ւր են հաւատք ձեր ։ Եւ զահի հարեալ զարմացան, և ասէին ցմիմեանս. ո՞վ արդեօք իցէ սա՝ զի և հողմոց և ջրոց հրաման տայ, և հնազանդին սմա ։ Եւ նաւեցին իջին յաշխարհն Գերգեսացւոց, որ է յայն կոյս հանդէպ Գալիլեայ ։ Եւ ընդ ելանելն նորա ի ցամաք՝ պատահեաց այր մի ի քաղաքէն, յորում էին դևք, և բազում ժամանակս չէր հանդերձ զգեցեալ և ոչ ի տան բնակեալ, այլ ի գերեզմանս ։ Եւ տեսեալ զՅիսուս, աղաղակեաց և անկաւ առաջի նորա, և ասէ մեծաձայն. զի՞ կայ իմ և քո, Յիսուս՝ որդի Աստուծոյ բարձրելոյ, աղաչեմ զքեզ՝ մի՛ տանջեր զիս ։ Քանզի հրաման տայր այսոյն պղծոյ ելանել ի մարդոյ անտի. զի բազում ժամանակս յափշտակեալ էր զնա, և կապէր ի շղթայս և պահէր յերկաթս, և խզէր զկապանսն, վարէր ի դիւէն յանապատ ։ Եհարց ցնա Յիսուս և ասէ. զի՞նչ անուն է քեզ ։ Եւ նա ասէ. լեգէոն ։ Զի դևք բազումք մտեալ էին ի նա. և աղաչէին զնա՝ զի մի՛ հրաման տացէ նոցա երթալ յանդունդս ։ Եւ էր անդ երամակ մի խոզից բազմաց արօտական ի լերինն. և աղաչեցին զնա՝ զի հրաման տացէ նոցա մտանել ի նոսա. և հրամայեաց նոցա ։ Եւ ելեալ դևքն յառնէն՝ մտին ի խոզեանսն. և դիմեաց երամակն ի դահէ անտի ի ծովակն՝ և հեղձաւ ։ Իբրև տեսին խոզարածքն զիրսն որ եղեն՝ փախեան, և պատմեցին ի քաղաքին և յագարակսն ։ Եւ իբրև ելին տեսանել զգործն, և եկին առ Յիսուս, և գտին զայրն ուստի դևքն ելեալ էին, զգեցեալ և զգաստացեալ նստէր առ ոտսն Յիսուսի, և երկեան ։ Պա-

Digitized by Google

մեցին նոցա որոց տեսեալն էր՝ թէ զիա՛րդ փրկեցաւ դիւահարն ։ Եւ աղաչէր զնա ամենայն բազմութիւնն շուրջ զկողմամբքն Գերգեսացւոց՝ գնալ ի սահմանացն նոցա , քանզի ահիւ մեծաւ տագնապէին . և նա մտեալ ի նաւ, դարձաւ անդրէն ։ Աղաչէր զնա այրն ուստի դեւքն ելեալ էին՝ շրջել ընդ նմա . արձակեաց զնա և ասէ . դարձ ի տուն քո, և պատմեա զոր միանգամ արար քեզ Աստուած ։ Գնաց ի քաղաքն՝ և քարոզէր զոր ինչ արար նմա Յիսուս ։ Եւ իբրև դարձաւ անդրէն Յիսուս, ընկալաւ զնա ժողովուրդն . քանզի ամենեքեան ակն ունէին նմա ։ Եւ ահա եկն այր մի՝ որում անուն էր Յայրոս, և նա էր իշխան ժողովրդեանն . անկեալ առ ոտս Յիսուսի , աղաչէր զնա մտանել ի տուն նորա . զի դուստր միամօր էր նորա , ամաց իբրև երկոտասանից , և էր մերձ ի մահ . և ընդ երթալն նորա՝ ժողովուրդքն նեղէին զնա ։ Եւ կին մի էր ի տեռատեսութեան արեան յամաց երկոտասանից , որում ոչ էր լեալ հնար յումեքէ բժշկել ։ Մատուցեալ յետոյ մերձեցաւ ի քղանցս հանդերձի նորա , և նոյնժամայն եկաց բղխումն արեան նորա ։ Եւ ասէ Յիսուս . ո՞վ է որ մերձեցաւն յիս ։ Իբրև ամենեքեան ուրանային , ասէ Պետրոս և որ ընդ նմա էին . Վարդապետ , ժողովուրդքդ պնդեն և նեղեն զքեզ ։ Եւ ասէ Յիսուս . ոմն մերձեցաւ յիս , քանզի գիտացի՝ եթէ զօրութիւն ել յինէն ։ Իբրև ետես կինն՝ թէ ոչ ծածկեցաւ ի նմանէ , եկն դողալով՝ և անկաւ առաջի նորա , թէ վասն որոյ իրաց մերձեցաւ ի նա՝ պատմեաց առաջի ամենայն ժողովրդեանն, և թէ որպէս բժշկեցաւ առժամայն ։ Եւ ասէ . քաջալերեաց դուստր , հաւատք քո կեցուցին զքեզ , երթ ի խաղաղութիւն ։ Եւ մինչդեռ նա խօսէր, գայ ոմն ի տանէ ժողովրդապետին և ասէ ցնա . մեռաւ դուստրն քո , մի՛ ինչ աշխատ առներ զդա ։ Իսկ Յիսուս իբրև լուաւ , պատասխանի ետ նմա և ասէ . մի՛ երկնչիր , միայն հաւատա՝ և կեցցէ ։ Եւ մտեալ ի տունըն , ոչ զոք եթող մտանել, բայց միայն զՊետրոս և ըզՅակովբոս և զՅովհաննէս , և զհայր մանկանն և զմայր նորա ։ Լային ամենեքեան և կոծէին զնա . և նա ասէ . մի՛ լայք՝ զի չէ մեռեալ, այլ ննջէ ։ Եւ նոքա ծաղր առնէին զնա , զի գիտէին թէ մեռաւ ։ Եւ նորա հանեալ զամենեսին արտաքս , կալաւ զձեռանէ նորա , բարբա-

Digitized by Google

ռեցաւ և ասէ. արի կաց, մանուկ դու։ Եւ դարձաւ ոգի նորա, և կանգնեցաւ վաղվաղակի. և հրամայեաց տալ նմա ուտել։ Եւ զարմացան ծնօղքն նորա. և նա պատուիրէր՝ մի՛ ումեք ասել որ ինչ եղեւն։ 57։

Քարոզ. Խնդրեսցուք։ Կեցո։ Աղօթ. Քում ամենազօր։

---

## ՅԵՐԵԿՈՅԻՆ

ՍԱՂ. ծխթ. Օրհնեցէք զՏէր յօրհնութիւն նոր։ 569։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի։ Ժ. 16։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս ասէ.

Ահաւասիկ ես առաքեմ զձեզ իբրեւ զոչխարս ի մէջ գայլոց. եղերուք այսուհետեւ խորագէտք իբրեւ զօձս, և միամիտք իբրեւ զաղաւնիս։ Զգոյշ լինիջիք ի մարդկանէ. զի մատնեսցեն զձեզ յատեանս, և ի ժողովուրդս իւրեանց տանջեսցեն զձեզ, և առաջի դատաւորաց և թագաւորաց տանիցեն զձեզ վասն իմ, ի վկայութիւն նոցա և հեթանոսաց։ Այլ յորժամ մատնիցեն զձեզ, մի՛ հոգայցէք՝ թէ ո՛րպէս կամ զի՛նչ խօսիցիք. զի տացի ձեզ ի ժամուն յայնմիկ զինչ խօսիցիք. զի ոչ եթէ դուք իցէք որ խօսիցիքն, այլ Հոգին Հօր ձերոյ որ խօսիցի ի ձեզ։ Մատնեսցէ եղբայր զեղբայր ի մահ, և հայր՝ զորդի. և յառնիցեն որդիք ի վերայ հարց և սպանանիցեն զնոսա, և եղիջիք ատեցեալք յամենեցունց վասն անուան իմոյ. իսկ որ համբերեսցէ ի սպառ՝ նա կեցցէ։ Եւ յորժամ հալածիցեն զձեզ ի քաղաքիս յայսմիկ՝ փախիջիք յայլ, և եթէ յայնմանէ հալածիցեն զձեզ՝ փախիջիք ի միւսն. ամէն ասեմ ձեզ, ոչ սպառեսջիք զքաղաքս իսրայելի՝ մինչեւ եկեսցէ որդի մարդոյ։ Ոչ է աշակերտ առաւել քան զվարդապետ, և ոչ ծառայ քան զտէր իւր. շատ իցէ աշակերտին՝ եթէ եղիցի իբրեւ զվարդապետ իւր, և ծառային՝ իբրեւ զտէր իւր։ Եթէ զտանուտէրն բէեղզեբուղ կոչեցին, որչափ եւս առաւել զընտանիս նորա։ Մի՛ այսուհետեւ երկնչիցիք ի նոցանէ. զի ոչ ինչ է ի ծածուկ՝ որ ոչ յայտնեսցի, և գաղտնի՝ որ ոչ ծանիցի։ Զոր ասեմ ձեզ ի խաւարի՝ ասացէք ի լոյս, և զոր լսէք յունկանէ՝ քարոզեցէք ի վերայ տանեաց։ Եւ մի՛ երկնչիք յայնցանէ՝ որ սպանանեն զմարմին, և զոգի ոչ կարեն սպանանել։ Այլ երկերուք դուք առաւել յայնմանէ՝

որ կարօղն է զոգի և զմարմին կորուսանել ի գեհենի։ Ո՞չ ապաքէն երկու ճնճղուկք դանգի միոջ վաճառին, և մի ի նոցանէ յերկիր ոչ անկցի առանց Հօր ձերոյ։ Այլ ձեր և ամենայն իսկ հեր գլխոյ թուեալ է. և արդ մի՛ երկնչիցիք՝ զի լաւ էք քան զբազում ճնճղուկս։ Ամենայն որ խոստովանեսցի յիս առաջի մարդկան, խոստովանե-ցից և ես զնմանէ առաջի Հօր իմոյ որ յերկինսն է։ Եւ որ ուրասցի զիս առաջի մարդկան, ուրացայց և ես զնա առաջի Հօր իմոյ որ յերկինսն է։ Մի՛ համարիք եթէ ե-կի արկանել խաղաղութիւն յերկիր. ոչ եկի արկանել խաղաղութիւն, այլ սուր. քանզի եկի քակել զայր ի հօրէ իւրմէ և զդուստր ի մօրէ իւրմէ և զհարսն ի սկե-սրէ իւրմէ, և թշնամիք առն՝ ընտանիք իւր։ Որ սիրէ զհայր կամ զմայր առաւել քան զիս, ոչ է ինձ արժա-նի։ Եւ որ սիրէ զուստր կամ զդուստր առաւել քան զիս, չէ ինձ արժանի։ Եւ որ ոչ առնու զխաչ իւր և գայ զկնի իմ, չէ ինձ արժանի։ Որ գտանէ զանձն իւր՝ կո-րուսցէ զնա, և որ կորոյս զանձն իւր վասն իմ՝ գտցէ զնա։ Որ ընդունի զձեզ՝ զիս ընդունի, և որ զիս ընդու-նի՝ ընդունի զառաքիչն իմ։ Որ ընդունի զմարգարէ յա-նուն մարգարէի՝ զվարձս մարգարէի առցէ, և որ ընդու-նի զարդար յանուն արդարոյ՝ զվարձս արդարոյ առցէ։ Եւ որ արբուսցէ միում ի փոքրկանցս յայսցանէ բաժակ մի ջուր ցուրտ միայն՝ յանուն աշակերտի, ամէն ասեմ ձեզ՝ ոչ կորուսցէ զվարձս իւր։ 42։

ՀԱՄԲԱՐՁԻ ԲԿ

Առաւօտեան սուրբ կանայքն։ Գ. Եղէ+ փո—ն։ 36։

ՍԱՂ. ՃԾ. Օրհնեցէք զԱստուած ի սրբութեան։ 571։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մարկոսի։ Դ. 10։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ իբրև եղև առանձինն, հարցին ցնա որ զնովաւն էին աշակերտօքն հանդերձ զառակսն։ Եւ ասէ ցնոսա. ձեզ տուեալ է գիտել զխորհուրդս արքայութեան Աստուծոյ. բայց նոցա որ արտաքինքն են՝ ամենայն ինչ առակօք լինի. զի տեսանելով տեսցեն՝ և մի՛ տեսցեն, և լսելով լուիցեն՝ և մի՛ իմասցին, զի մի՛ երբեք դարձցին՝ և թող-ցի նոցա։ Եւ ասէ ցնոսա. ոչ գիտէք զառակս զայս, և

Digitized by Google

ամենայն տեղիս: Լուաւ Հերովդէս չորրորդապետ զգործսն ամենայն, և զարմանայր վասն ասելոյն յոմանց, եթէ Յովհաննէս յարեաւ ի մեռելոց, և յոմանց՝ թէ Եղիա յայտնեցաւ, և յայլոց՝ թէ մարգարէ ոմն յառաջնոցն յարեաւ: Ասէ Հերովդէս. զՅովհաննէս՝ ես գլխատեցի. իսկ սա ո՞վ իցէ զորմէ զայսպիսի իրս լսեմ: Եւ խնդրէր տեսանել զնա: Դարձան առաքեալքն, և պատմեցին Նմա զամենայն զոր արարին: Եւ առեալ զնոսա խուսեաց առանձինն ի տեղի անապատ քաղաքի միոյ, որում անուն էր Բեթսայիդա: Եւ ժողովուրդքն իբրև գիտացին, գնացին զհետ Նորա. և ընկալեալ զնոսա խօսէր ընդ Նոսա վասն արքայութեան Աստուծոյ, և որոց պէտք էին բժշկութեան՝ բժշկէր: Եւ օրն սկսաւ տարաժամել. մատեան երկոտասանքն և ասեն ցնա. արձակեա զժողովուրդդ, զի երթեալ շուրջ ի գեօղսն և յագարակս հանգիցեն, և գտցեն կերակուր. զի աստ յանապատ տեղւոջ եմք: Ասէ ցնոսա. դուք տուք դոցա ուտել: Եւ նոքա ասեն. ոչ գոյ մեր աւելի քան զհինգ նկանակ և զերկուս ձկունս, բայց եթէ երթիցուք գնեսցուք բաւական ժողովրդեանդ կերակուր: Քանզի էին արք իբրև հինգ հազար: Ասէ ցաշակերտսն. բազմեցուցէք զդոսա դասս դասս, յիսուն յիսուն: Եւ արարին այնպէս, և բազմեցուցին զամենեսեան: Եւ առեալ զհինգ նկանակն և զերկուս ձկունսն, հայեցաւ յերկինս՝ օրհնեաց, և եբեկ և տայր աշակերտացն արկանել ժողովրդեանն: Կերան և յագեցան ամենեքեան, և բարձին զնշխարս կոտորոցն երկոտասան սակառի: 17:

Քարոզ. Խնդրեսցուք: Կեցո: Աղօթ+. Քում ամենազօր

---

## Ց Ե Ր Ե Կ Ո Յ Ի Ն

ՍԱՂ. ԿԶ. Աստուած ողորմեա մեզ և օրհնեա: 563

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի: ԺԱ. 1:

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ եղև իբրև կատարեաց (Յիսուս) զպատուէր երկ
տասանից աշակերտացն իւրոց, գնաց անտի քարոզել
ուսուցանել ի քաղաքս նոցա: Իսկ Յովհաննէս իբրև լու
ի բանտին զգործսն Քրիստոսի, առաքեաց ի ձեռն աշ
կերտաց իւրոց, և ասէ ցնա. դու՞ ես որ գալոցն ես,

թէ այլում ակն կալցուք ։ Պատասխանի ետ Յիսուս և ասէ ցնոսա. գնացէք պատմեցէք Յովհաննու՝ զոր լուայք և տեսէք. կոյրք տեսանեն, կաղք գնան, բորոտք սըրբին՝ և խուլք լսեն, և մեռեալք յառնեն, և աղքատք աւետարանին. և երանեալ է՝ որ ոչ գայթակղեսցի յիս ։ Եւ իբրև նոքա գնացին, սկսաւ Յիսուս ասել ցժողովուրդսն զՅովհաննէ. զի՞նչ ելէք տեսանել յանապատին, եղէ՞գն շարժուն ի հողմոյ. այլ զի՞նչ ելէք տեսանել, մա՞րդ ի հանդերձս փափկութեան զարդարեալ ։ Ահաւանիկ որ զփափուկսն զգեցեալ են՝ ի տունս թագաւորաց են ։ Այլ զի՞նչ ելէք տեսանել. մարգարէ՞. այո՛ ասեմ ձեզ, և առաւել ևս քան զմարգարէ ։ Զի նա է վասն որոյ գրեալն է. ահա ես առաքեցից զհրեշտակ իմ առաջի երեսաց քոց, որ պատրաստեսցէ զճանապարհս քո առաջի քո ։ Ամէն ասեմ ձեզ, չէ յարուցեալ ի ծնունդս կանանց մեծ քան զՅովհաննէս Մկրտիչ. բայց փոքրիկն յարքայութեան երկնից մեծ է քան զնա ։ Բայց յաւուրցն Յովհաննու Մկրտչի մինչև ցայժմ՝ արքայութիւն երկնից բռնադատի, և բռունք յափշտակեն զնա ։ Քանզի ամենայն օրէնք և մարգարէք մինչև ցՅովհաննէս մարգարէացան ։ Եւ եթէ կամիք ընդունել՝ նա է Եղիա՝ որ գալոցն է ։ Որ ունիցի ականջս լսելոյ՝ լուիցէ ։ Ո՞ւմ նմանեցուցից զազգս զայս. նման է մանկտւոյ՝ որ նստիցին ի հրապարակս, կարդայցեն զընկերս իւրեանց, և ասիցեն. փողս հարաք ձեզ՝ և ոչ կաքաւեցէք, ողբացաք ձեզ՝ և ոչ կոծեցարուք ։ Եկն Յովհաննէս, ոչ ուտէր և ոչ ըմպէր, և ասեն, դև գոյ ի նմա ։ Եկն որդի մարդոյ՝ ուտէ և ըմպէ, և ասեն, ահա այր կերող և արբեցող, բարեկամ մաքսաւորաց և մեղաւորաց. և արդարացաւ իմաստութիւն յորդւոց իւրոց ։ Յայնժամ սկսաւ նախատել զքաղաքսն՝ յորս եղեն բազում զօրութիւնք նորա, և ոչ ապաշխարեցին ։ Վա՜յ քեզ՝ Քորազին, վա՜յ քեզ՝ Բեթսայիդա. զի եթէ ի Տիւրոս և ի Սիդոն եղեալ էին զօրութիւնքն՝ որ ի ձեզ եղեն, վաղու ևս արդեօք խորգով և մոխրով ապաշխարեալ էր ։ Բայց ասեմ ձեզ. դիւրագոյն լիցի երկրին Տիւրոսի և Սիդոնի յաւուրն դատաստանի՝ քան ձեզ ։ Եւ դու Կափառնաում, մի՛ մինչև յերկինս բարձրացցիս, այլ մինչև ի դժոխս իջցես ։ Զի եթէ ի Սոդոմ եղեալ էին զօրութիւնքն՝ որ եղեն ի քեզ, ա֊



Digitized by Google

պաքէն կային և մինչև ցայսօր ։ Բայց ասեմ ձեզ՝ եթէ երկրին Սոդոմացւոց դիւրագոյն լիցի յաւուրն դատաստանի՝ քան քեզ ։ 24 ։

ՄԵՍԵԴԻ Գալարեան

Օրհնեալ որ գաս յանուն Տեառն, օրհնեալ որ գալոց ես ։

Տէր Աստուած մեր երևեցաւ մեզ. արարէք տօնս ուրախութեան կանխաւ՝ մինչև յանկիւնս սեղանոյ ։

ՀԱՄԲԱՐՁԻ ԱՁ

Որ վերօրհնիս յաթոռս քերովբէից ։ Ձյ դառն ։ 310 ։

ՍԱՂ. Զ. Ցնծացէք առ Աստուած օգնական է ։ 457 ։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մարկոսի ։ Դ. 21 ։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ ասէ ցնոսա. միթէ գա՞յ ճրագ զի ընդ գրուանաւ դնիցի, կամ ընդ մահճօք. ո՞չ ապաքէն ի վերայ աշտանակի դնիցի ։ Զի չէ ինչ ի ծածուկ, որ թէ ոչ յայտնեսցի. և ոչ եղև ինչ գաղտնի, եթէ ոչ ի յայտ գայցէ. եթէ ոք ունիցի ականջս լսելոյ՝ լուիցէ ։ Եւ ասէ ցնոսա. տեսէք զինչ լսէքդ, և յաւելցի ձեզ որոց լսէքդ. որով չափով չափէք՝ նովին չափեսցի ձեզ ։ Որ ոք ունիցի տացի նմա. և որ ոչն ունիցի, և զոր ունին՝ բարձցի ի նմանէ ։ 25 ։

Քարոզ. Խնդրեսցուք ։ Կեցո ։ Աղօթ. Թագաւոր ։

---

# Դ. ԿԻՐԱԿԷ. ԳԿ

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԲԿ

Անըսկիզբն Աստուած և ամենազօր. որ առաքեցեր ըզմիածին Որդիդ քո ի փրկութիւն մեզ. Օրհնեմք ըզքեզ Աստուած հարցըն մերոց ։ Ծնար ի Հօրէ՝ անճառ միութիւն. ի կուսական որովայնէ երևեալ մարմնով ի փրկութիւն մեզ. օրհնեմք ։ Որ նըստիս ի քրովբէս և յանմարմնոց վերօրհնիս Քրիստոս սրբասաց ձայնիւ. համբերելով չարչարանաց ի խաչին բարձրացար խորտակեցեր ըզզօրութիւն մահու. օրհնեմք ։

Գ. Ըստէր ‖ Ամենայն մարդիկ զՔրիստոս զգեցէք զյարուցեալն ի գերեզմանէն ամենակալն մարմնով։ Զքարոզ հրեշտակին լուեալ կանանցն ընթացեալ պատմէին աշակերտացն ասելով. յարեաւ Աստուած ամենայն։ Եւ մեք ընդ նոսին երգակցեալ հանգուցուք զօրհնութիւն. փրկողին ըզմեզ ասելով յարեաւ Աստուած ամենայն։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԲԿ

Սիւն լուսոյ և ամպ հովանի սուրբ կոյս. որ։ 228։

ՈՂՈՐՄԵԱ ԲԿ

Իջեր Տէր եւ մարմնացար ի կուսէն. եւ զհողեղէն բնութիւնս մեր զգեցեր ի մեզ։ Եկեր Տէր բեւեռեցար ի խաչին. ըզմեռեալն յանձն առեր կենդանանալ մեռելոց։ Եդար Տէր ի նորափոր ի վիմի. եւ մատնեալ կրկեցար զանձրեւ կենաց աշխարհի։ Յարեար Տէր աւերեցեր ըզդժոխս. ի յերկինս համբարձար եւ ընդ աջմէ հօր նստար։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԲԿ

Քրիստոս յարեաւ ի մեռելոց։ Ընդ արշալուսն առաւօտուն կանխեալ կանանցն ի գերեզմանն ասելով Քրիստոս յարեաւ։ Եւ առ նոսա ասէր հրեշտակն զի՞ խնդրէք զկենդանին ընդ մեռեալս Քրիստոս։ Փութացարուք ով սուրբ կանայք եւ պատմեցէք աշակերտացն ասելով Քրիստոս։

ՍԱՂ. ՁԴ. ԿՑ. Ցոյց մեզ։ Փխ. Հաճեցար։ 567։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու։ Թ. 18։

Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի

Եւ եղև ի կալն (նորա) յաղօթս առանձինն՝ էին ընդ նմա և աշակերտքն նորա. եհարց զնոսա և ասէ. զո՞ ոք ասեն զինէն ժողովուրդքն՝ թէ իցեմ։ Եւ նոքա պատասխանի տուեալ ասեն. զՅովհաննէս Մկրտիչ, և այլք՝

Digitized by Google

զԵղիա, իսկ այլք՝ թէ մարգարէ ոք յառաջնոցն յարեաւ:
Ասէ ցնոսա. դուք զո՞վ ոք ասէք զինէն թէ իցեմ: Պա-
տասխանի ետ Պետրոս և ասէ. զՔրիստոսն Աստուծոյ:
Նա սաստեաց ի նոսա, և պատուիրեաց մի՛ ումեք ասել
զայն. և ասէ, թէ պարտ է որդւոյ մարդոյ բազում չար-
չարել և անարգել ի քահանայապետից և ի ծերոց և ի
դպրաց, և սպանանել և յերիր աւուր յառնել: Եւ ասէր
առ ամենեսին. եթէ ոք կամի զկնի իմ գալ, ուրասցի
զանձն, և առցէ զխաչ իւր համապազ, և եկեսցէ զկնի
իմ. Զի որ կամիցի զանձն իւր կեցուցանել՝ կորուսցէ
զնա, և որ կորուսցէ զանձն իւր վասն իմ՝ կեցուսցէ
զնա: Զի՞նչ օգուտ է մարդոյ՝ եթէ զաշխարհ շահեսցի,
և զանձն իւր կորուսցէ կամ տուժեսցի: Զի որ ամօթ
համարեսցի զիս և զբանս իմ, զնա և որդի մարդոյ յա-
մօթ արասցէ՝ յորժամ գայցէ փառօք իւրովք և Հօր և
հրեշտակաց սրբոց: Բայց արդարև ասեմ ձեզ, եթէ են
ոմանք ի դոցանէ որ այդր կան, որք մի՛ ճաշակեսցեն
զմահ, մինչև տեսցեն զարքայութիւն Աստուծոյ: Եւ եղև
յետ այսց բանից իբրև աւուրք ութ, առեալ զՊետրոս և
զՅակովբոս և զՅովհաննէս՝ ել ի լեառն կալ յաղօթս: Եւ
ի կալն նմա յաղօթս՝ եղև տեսիլ երեսաց նորա այլակերպ,
և փոխեցաւ հանդերձ նորա և եղև սպիտակ փայլուն: Եւ
ահա արք երկու խօսէին ընդ նմա, որ էին Մովսէս և
Եղիա, երևեալ փառօք. և ասէին զելիցն նորա զոր կա-
տարելոց էր յԵրուսաղէմ: Իսկ Պետրոս և որ ընդ նմայն
էին՝ ծանրացեալք ի քնոյ, զարթեան տեսին զփառսն նո-
րա և զերկուս արսն որ կային առ նմա: Եւ եղև ի մե-
կնելն նոցա ի նմանէ, ասէ Պետրոս ցՅիսուս. վարդապետ,
բարւոք է մեզ աստ լինել, և արասցուք երիս տաղաւարս,
մի քեզ և մի Մովսիսի և մի Եղիայի: Եւ ոչ գիտէր զինչ
խօսէր: Եւ իբրև զայս ասաց, եկն ամպ և հովանի եղև
ի վերայ նոցա. և երկեան ի մտանելն նոցա ընդ ամ-
պովն: Ձայն եղև յամպոյն և ասէ. դա է որդի իմ ըն-
տրեալ, դմա լուարուք: Եւ ընդ լինել բարբառոյն՝ գը-
տաւ Յիսուս միայն. և նոքեանք լռեցին, և ոչ ումեք
պատմեցին յաւուրսն յայնոսիկ և ոչ ինչ յորոց տեսի-
նըն: 36:

Եչք. Նորաստեղծ: Քաջ. Խնդր: Կեցո: Աղ. Քում ամէ:

---

## ՅԵՐԵԿՈՅԻՆ

ՍԱՂ. ԾԽԹ. Օրհնեցէք զՏէր յօրհնութիւն: 569:

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի: ԺԱ. 25:

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Յայնմ ժամանակի պատասխանի ետ (Յիսուս) և ասէ. գոհանամ զքէն Հայր, Տէր երկնի և երկրի. զի ծածկեցեր զայս յիմաստնոց և ի գիտնոց, և յայտնեցեր տղայոց. այո Հայր, զի այսպէս հաճոյ եղև առաջի քո: Ամենայն ինչ տուաւ ինձ ի Հօրէ իմմէ: Եւ ոչ ոք ճանաչէ զՈրդի՝ եթէ ոչ Հայր, և ոչ զՀայր ոք ճանաչէ՝ եթէ ոչ Որդի, և ում Որդին կամիցի յայտնել: Եկայք առ իս ամենայն վաստակեալք և բեռնաւորք, և ես հանգուցից զձեզ. առէք զլուծ իմ ի ձեզ, և ուսարուք յինէն՝ զի հեզ եմ և խոնարհ սրտիւ, և գտջիք հանգիստ անձանց ձերոց. զի լուծ իմ քաղցր է, և բեռն իմ փոքրոգի: 30:

ՀԱՄԲԱՐՁԻ ԳԿ

Զաստուածային զգերեզմանաւն: Բ. Երեք տուն: 42:

ՍԱՂ. ԾԾ. Օրհնեցէք զԱստուած ի սրբութեան: 571:

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մարկոսի: Դ. 26:

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ ասէր. այսպէս է արքայութիւն Աստուծոյ, որպէս զի այր մի արկանիցէ սերմանիս յերկիր, և ննջիցէ և յառնիցէ զցայգ և զցերեկ. և սերմանիքն բուսանիցին և աճիցեն, և նա ոչ գիտէ՝ թէ երկիրն ինքնին բերէ զպտուղ. նախ զխոտն, և ապա զհասկն, և ապա ցորեան ատոք ի հասկին. այլ յորժամ տայցէ զպտուղն, վաղվաղակի առաքի մանգաղ, զի հասեալ են հունձք: Եւ ասէր. ո՞ւմ նմանեցուսցուք զարքայութիւնն Աստուծոյ, կամ որո՞վ առակաւ առակեսցուք զնա: Որպէս հատն մանանխոյ՝ որ յորժամ սերմանիցի յերկրի, փոքրագոյն է քան զամենայն սերմանիս՝ որ են յերկրի, և յորժամ սերմանիցի, բուսանի և լինի մեծ քան զամենայն բանջար և արձակէ ոստս մեծամեծս, մինչև բաւական լինել ընդ հովանեաւ նորա թռչնոց երկնից բնակել: Եւ այնպիսի առակօք խօսէր ընդ նոսա զբանն, որպէս կարող լինէին լսել. և առանց առակի ոչ ինչ

Digitized by Google

խօսէր ընդ նոսա , բայց առանձինն աշակերտացն իւրոց մեկնէր զամենայն ։ 34 ։

Քարոզ. Խնդրեսցուք ։ Կեցո ։ Աղօթ. Թագաւոր ։

---

# Դ · ԵՐԿՈՒՇԱԲԱԹԻ · ԴՋ

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԲԿ

Որ զծառայի ըզկերպարանըս յանձն առեր վասն մեր . եւ խոնարհեցար քո կամաւ ի մեր բընութիւնս . Օրհնեալ ես Տէր Աստուած հարցըն մերոց ։ Որ խաչեցար հաճութեամբ Հօր միածին Որդի . եւ թաղմամբն երեքօրեայ ըզգերընութիւն մահու լուծեր . օրհնեալ ։ Որ փառաւոր յարութեամբըդ քո կանգնեցեր ըզմահացեալսն . ի յերկինըս համբարձար ընդ անմահ Հօր նըստար . օրհնեալ ։

Գ. Ըզ Տէր Օրհնեցէք եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան ։ Հրաշալի յարութեամբ փրկչին նորոգեցան արարածք . միաբանութեամբ օրհն ։ Դողալով սարսեցին դըժոխք տեսանելով ըզթագաւորն անմահ . միաբանութեամբ օրհն ։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԲԿ

Որ ողորմեցար ի մեզ ծնեալ մարդկան Հայր ։ 229 ։

ՈՂՈՐՄԵԱ ԲԿ

Թլինս իմ Որ իջեր յերկընից Բանն Աստուած առեր մարմին ի մերոյ բընութեան . Վասն յանցանաց նախաստեղծին ողորմեա մեզ Աստուած ։ Ի խաչին բեւեռեցար կամաւորապէս Փրկիչ եւ զխոցումըն յանձն առեր ի զինուորէն վասն ։ Ի գերեզմանի եղար անապականաբար Փրկիչ եւ զթաղումըն յանձն առեր զերեքօրեայ յարուցեալ լոյս ծագեցեր ստուերացն նըստող . ողորմեա ։

Digitized by Google

ՑԷՐ ՑՆՐԿՆԻՑ ԲԿ

Առաւօտեան սուրբ կանայքն հանդերձ իւղովք և խնկովք եկին ի սուրբ գերեզմանն. եւ ողբալով խնդրէին զանմահն || փառաց թագաւորն: Եւ ի ձայնէ հրեշտակին զուարճացան տրտմազգեացք առաւօտեան սուրբ կանայք զի՞ խնդրէք ըզկենդանին ընդ մեռեալս յարեաւ փառաց: Աստուածասէր սուրբ կանայք փութացարուք հետեւեալ. պատմող լինել Պետրոսի եւ Յովհաննու սիրելոյ. յարեաւ փառաց:

ՍԱՂ. ՁԴ. կԸ. Ցոյց մեզ: փխ. Հաճեցար: 567:

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու: Թ. 37:

Տերամբ մերով Յիսուսիւ Քրիստոսիւ

Եւ եղեւ ի վաղիւն՝ մինչ իջանէին նոքա ի լեռնէ անտի, ընդ առաջ եղեւ նմա ժողովուրդ բազում: Եւ ահա այր մի ի ժողովրդենէ անտի աղաղակեաց և ասէ. Վարդապետ, աղաչեմ զքեզ՝ հայեաց յորդի իմ, զի միամօր է ինձ. և ահա այս հարկանի ի նմա, և յանկարծ գոչէ, և զարկուցանէ զնա և թաւալեցուցանէ զնա և փրփրեցուցանէ, և հազիւ մեկնի ի նմանէ՝ խորտակեալ զնա. և աղաչեցի զաշակերտսն քո զի հանցեն զնա, և ոչ կարացին: Պատասխանի ետ Յիսուս և ասէ. ո՜վ ազգ անհաւատ և թիւր, մինչև յե՞րբ եղէց ընդ ձեզ և անսայցեմ ձեզ. մատո այսր զորդին քո: Եւ մինչդեռ մատչէր, զարկոյց զնա դեւն և շարժլեաց: Սաստեաց Յիսուս այսոյն պղծոյ, և բժշկեաց զմանուկն, և ետ զնա ցհայր իւր: Եւ զարմանային ամենեքեան ի վերայ մեծամեծացն Աստուծոյ: Եւ ի զարմանալն ամենեցուն ի վերայ ամենայնի զոր առնէր, ասէ ցաշակերտսն իւր. դիք դուք ի լսելիս ձեր զբանս զայսոսիկ, զի որդի մարդոյ մատնելոց է ի ձեռս մարդկան: Եւ նոքա ոչ գիտէին զբանն, և էր ծածկեալ ի նոցանէ զի մի՛ գիտասցեն. և երկընչէին հարցանել ցնա վասն բանին այնորիկ: Եմուտ խորհուրդ ի նոսա, թէ ո՞ արդեօք մեծ իցէ ի նոցանէ: Յիսուս իբրև ծանեաւ զխորհուրդս սրտից նոցա, առ մանուկ մի՝ կացոյց ի մէջ նոցա առ իւր, և ասէ ցնոսա.

Digitized by Google

որ ոք ընկալցի զմանուկս զայս յանուն իմ՝ զիս ընդունի . և որ զիս ընդունիցի՝ ընդունի զառաքիչն իմ . զի որ փոքրիկն է յամենեսին ի ձեզ՝ նա եղիցի մեծ ։ Պատասխանի ետ Յովհաննէս և ասէ . Վարդապետ , տեսաք զոմն զի յանուն քո դևս հանէր՝ և արգելաք զնա , զի ոչ շրջի ընդ մեզ ։ Ասէ ցնոսա Յիսուս . մի՛ արգելուք զնա , զի որ ոչն է ձեր թշնամի՝ ի ձեր կողմն է ։ 50 ։

Քարոզ . Խնդրեսցուք ։ Կեցո ։ Աղօթ . Քում ամենազօր ։

---

## ՅԵՐԵԿՈՅԻՆ

ՍԱՂ . ՃԽԹ . Օրհնեցէք զՏէր յօրհնութիւն նոր ։ 569 ։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի ։ ԺԲ . 1 ։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Յայնժամ գնաց (Յիսուս) ընդ արտորայսն նոցա ի շաբաթու . և աշակերտքն նորա քաղցեան , և սկսան հասկ կորզել և ուտել . փարիսեցիքն իբրև տեսին՝ ասեն ցնա . ահաւանիկ աշակերտքն քո գործեն , զոր ոչ է արժան գործել ի շաբաթու ։ Եւ նա ասէ ցնոսա . ո՞չ իցէ ընթերցեալ ձեր՝ զոր արար Դաւիթ , յորժամ քաղցեաւն , և որ ընդ նմայն էին . զիա՞րդ եմուտ ի տունն Աստուծոյ՝ և եկեր զհաց զառաջաւորութեանն . զոր ոչ էր օրէն նմա ուտել , և ոչ՝ որոց ընդ նմայն էին , բայց միայն քահանայից ։ Կամ թէ չիցէ՞ ընթերցեալ յօրէնս՝ զի ի շաբաթս քահանայքն ի տաճարին պղծեն զշաբաթն , և անմեղք են . բայց ասեմ ձեզ՝ զի մեծ քան զտաճարն է աստ ։ Եւ եթէ գիտէիք զինչ է՝ զողորմութիւն կամիմ՝ և ոչ զզոհ , ապա ոչ դատապարտէիք դուք զանպարտսն ։ Զի տէր է շաբաթու որդին մարդոյ ։ Եւ գնացեալ անտի Յիսուս՝ եկն ի ժողովուրդն նոցա ։ Եւ անդ էր այր մի՝ որոյ ձեռն իւր գօսացեալ էր . հարցին ցնա՝ և ասեն , եթէ պա՞րտ իցէ ի շաբաթու բժշկել . զի չարախօսեսցեն զնմանէ ։ Եւ նա ասէ ցնոսա . ո՞վ է ի ձէնջ մարդ՝ որոյ իցէ ոչխար մի , և անկանիցի այն ի խորխորատ ի շաբաթու . միթէ ո՞չ ունիցի և յարուցանիցէ զնա . իսկ արդ ո՞րչափ առաւել է մարդ քան զոչխար . ապա ուրեմն պարտ է ի շաբաթու բարիս գործել ։ Յայնժամ ասէ ցայրն . ձգեա զձեռն քո , և նա ձգեաց՝ և եղև ողջ իբրև զմիւսն ։ Իսկ փարիսեցիքն ելեալ արտաքս խորհուրդ առին զնմանէ՝

Digitized by Google

թէ որպէս կորուսցեն զնա ։ Եւ Յիսուս իբրեւ գիտաց , մեկնեցաւ անտի ։ Եւ գնացին զհետ նորա ժողովուրդք բազումք , եւ բժշկեաց զամենեսեան ։ Եւ սաստեաց նոցա՝ զի մի՛ յայտնեսցեն զնմանէ ումեք . զի լցցի որ ասացաւն ի ձեռն Եսայեայ մարգարէի . Ահա մանուկ իմ՝ զոր ընտրեցի , եւ սիրելի իմ՝ ընդ որ հաճեցաւ անձն իմ . եդից զոգի իմ ի վերայ նորա , եւ իրաւունս հեթանոսաց պատմեսցէ . ոչ հակառակեսցի եւ ոչ աղաղակեսցէ , եւ ոչ ոք լուիցէ ի հրապարակս զբարբառ նորա ։ Զեղէգն ջախջախեալ ոչ փշրեսցէ , եւ զպատրոյկն առկայծեալ ոչ շիջուսցէ , մինչեւ հանցէ ի յաղթութիւն զդատաստանն . եւ յանուն նորա հեթանոսք յուսասցին ։ 21 ։

ՀԱՄԲԱՐՁԻ ԴՁ

Որ ի վերդ ես քան զմիտս եւ ։ Դ . Եղե+ փառ ։ 45 ։

ՍԱՂ . ԾԾ . Օրհնեցէք զԱստուած ի սրբութեան ։ 571 ։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մարկոսի ։ Դ . 35 ։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ ասէ ցնոսա յաւուր յայնմիկ՝ իբրեւ ընդ երեկս լինէր . եկայք անցցուք յայն կողմն ։ Թողուն զժողովուրդն , եւ առնուն զնա նաւաւն հանդերձ , եւ զայլ եւս նաւսն որ էին ընդ նմա ։ Եւ լինէր մրրիկ մեծ հողմոյ , եւ զալիսն ի նաւն զեղոյր մինչ գրեթէ լի իսկ լինել . եւ ինքն նընջէր ի խելս նաւին ի վերայ բարձի ։ Զարթուցանէին ըզնա եւ ասէին . Վարդապետ , ո՞չ ինչ է քեզ փոյթ , զի կորնչիմք աւասիկ ։ Եւ զարթուցեալ սաստեաց հողմոյն . եւ ծովուն ասէ . դադարեա կարկեաց . եւ դադարեաց հողմն , եւ եղեւ խաղաղութիւն մեծ ։ Եւ ասէ ցնոսա . ընդէ՞ր այդպէս վատասիրտք էք , չեւ եւս ունիք հաւատս ։ Եւ երկեան երկիւղ մեծ , եւ ասէին ցմիմեանս . ո՞ ոք արդեօք իցէ սա , զի եւ հողմ եւ ծով հնազանդին սմա ։ Եւ եկն յայնկոյս ծովուն՝ յաշխարհն Գերգեսացւոց ։ Եւ ընդ ելանելն նորա ի նաւէ անտի , պատահեաց նմա այր մի ի գերեզմանացն՝ զոր ունէր այս պիղծ , որոյ եւ բնակութիւնն իւր իսկ ի գերեզմանս էր . եւ ոչ շղթայիւք ոք եւս կարէր կապել զնա , վասն բազում անգամ ոտնակապօք եւ շղթայիւք կապելոյ , եւ խզելոյ ի նմանէ զշղթայսն եւ զոտնակապսն խորտակելոյ . եւ ոչ ոք կարէր պարտել ըզնա , քանզի հանապազ զցայգ եւ զցերեկ ի գերեզմանս

և ի լերինս աղաղակէր, և կոծէր զանձն իւր քարամբք։ Իբրև ետես զՅիսուս ի հեռաստանէ, ընթացաւ և երկիր եպագ նմա. աղաղակեաց ի ձայն մեծ և ասէ. զի՞ կայ իմ և քո, Յիսուս որդի Աստուծոյ բարձրելոյ. երդմնեցուցանեմ զքեզ յԱստուած, մի՛ տանջեր զիս։ Քանզի ասէր ցնա. ել, այսդ պիղծ, ի մարդոյ այտի։ Եւ հարցանէր ցնա՝ թէ զի՞նչ անուն է քո. և ասէր ցնա. լեգէոն անուն է իմ, քանզի բազումք եմք։ Եւ աղաչէին զնա յոյժ, զի մի՛ առաքեսցէ զնոսա արտաքս քան զաշխարհն։ Եւ անդ էր առ լերամբն երամակ մի խոզաց՝ արօտական մեծ։ Աղաչեցին զնա ամենայն դևքն և ասեն. առաքեա զմեզ ի խոզսն, զի մտցուք ի նոսա։ Եւ հրամայեաց նոցա։ Եւ իբրև ելին այսքն պիղծք՝ մտին ի խոզսն, և դիմեաց երամակն ի դարէ անտի ի ծովն. էին իբրև երկու հազարք, և հեղձնուին ի ծովուն։ Եւ խոզարածքն փախեան, և պատմեցին ի քաղաքին և յագարակս, և ելին տեսանել զինչ իցէ որ գործեցաւն։ Գան առ Յիսուս, և տեսանեն զդիւահարն զի նստէր զգեցեալ և զգաստացեալ, որ ունէր զլէգէոնն, և զահի հարան։ Եւ պատմեցին նոցա որոց տեսեալն էր, թէ զինչ եղև դիւահարին, և զինչ վասն խոզիցն։ Եւ սկսան աղաչել զնա՝ գնալ ի սահմանաց նոցա։ Եւ իբրև եմուտ նա ի նաւն, աղաչէր զնա դիւահարն՝ զի ընդ նմա իցէ. և Յիսուս ոչ ետ նմա թոյլ, այլ ասէ ցնա. երթ ի տուն քո առ ընտանիս քո, և պատմեա նոցա որ ինչ միանգամ Տէր արար քեզ՝ և ողորմեցաւ քեզ։ Եւ չոգաւ և սկսաւ քարոզել ի Դեկապոլին, զոր ինչ արար նմա Յիսուս. և ամենեքին զարմանային։ Ե. 20։

Քարոզ. Խնդրեսցուք։ Կեցո։ Աղօթ. Թագաւոր։

---

# Դ. ԵՐԵՔՇԱԲԱԹԻ. ԴԿ

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

### ՀԱՐՑ ԲԿ

Որ էիր յառաջ քան զյաւիտեանս Բանդ Աստուած. վասն մերոյ փրկութեան առեր մարմին ի սուրբ կուսէ ... ծն || ընդ քեզ օրհնեմք Աստուած հարցն մերոց։ Որ ընկերպայրանըս ծա-

ռայի ճշմարտապէս յանձն առեր. եւ խաչի եւ մահու համբերելով իջեր ի գերեզման ն ըզքեզ: Որ նորոգեալ թաղմամբ փրկիչ սուրբ զյարութիւնըդ քո ցուցեր. եւ վերըստին նորոգեալ կեցուցեր ըզհընացեալըս մեղօք. ըզքեզ:

Գ. ԸզՏէր օրհնեցէք || Ամենայն ազինըք բարձր արարէք: Զխաչեալըն ի մէջ երկրի և զեդեալըն ի նոր գերեզմանի. ամենայն: Զյարուցեալըն իշխանութեամբ և զաւերողըն դըժողոց. ամենայն:

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԲԿ

Ուրախ լեր մայր լուսոյ Մարիամ. երկիր բա: 222:

ՈՂՈՐՄԵԱ ԲԿ

Որ համագոյդ ես Հօր և սուրբ Հոգւոյն. անբաժանելի էակ միութեան խոնարհեցար ի բարձանց եւ առեր մարմին ի կուսէն. յաղագս անկելոյն. յանլուծիչ կենաց բանաւորկութին խաբմամբ: Որ դատաւորդ ես ծածկելոց գիտող. այսօր ի հողոյ դատապարտելոյ բարձար ի խաչ եւ լեղեաւ կերակրեցար. յաղագս անկելոյն. ի ճաշակմանէ մահաբեր պըտղոյն: Որ կենդանութիւնդ ես ամենեցուն այսօր ըզմահ խաչի ի յանձն առեր եդար ի սիրտ երկրի եւ յերրորդ աւուր յարեար. շնորհեա մեզ վերածիլ ընդ քեզ յանապատում ի կեանս:

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԲԿ

Կանխեցին կանայքն. ընդ առաւօտն ի գերեզմանն հանդերձ խընկովք: Բերելով զիւղս անուշունս. ի յօծումըն կենարար մարմնոյ փրկչին մերոյ. Եւ հրեշտակըն զօրութեամբ. գոչելով աղաղակէր յարեաւ Քրիստոս:

ՍԱՂ. ՁԴ. կՑ. Ցոյց մեզ Տէր: փխ. Հանեցար: 567:

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու ։ Թ. 51 ։

Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի

Եւ եղև ի կատարել աւուրց վերանալոյ Նորա՝ և ինքն զերեսս հաստատեաց երթալ յԵրուսաղէմ ։ Եւ առաքեաց հրեշտակս առաջի երեսաց իւրոց. և իբրև չոգան, մտին ի գիւղ մի Սամարացւոց՝ պատրաստել ինչ Նմա. և ոչ ընկալան զՆա, զի դէմ եդեալ էր Նորա երթալ յԵրուսաղէմ ։ Իբրև տեսին աշակերտքն Յակոբոս և Յովհաննէս՝ ասեն. Տէր, կամի՞ս զի ասասցուք, և իջցէ հուր յերկնից և սատակեսցէ զնոսա ։ Դարձաւ սաստեաց ի նոսա և ասէ. ոչ գիտէք՝ որոյ հոգւոյ էք դուք. զի որդի մարդոյ ոչ եկն զոգիս մարդկան կորուսանել՝ այլ կեցուցանել ։ Եւ գնացին յայլ գեօղ ։ Եւ մինչդեռ երթային նոքա ի ճանապարհի՝ ասէ ոմն ցնա. եկից զկնի քո՝ յոր վայր և երթիցես ։ Ասէ ցնա Յիսուս. աղուեսուց որջք գոն, և թռչնոց երկնից դադարք, և որդւոյ մարդոյ ոչ գոյ ուր դիցէ զգլուխ ։ Ասէ ցմիւս ևս. եկ զկնի իմ ։ Եւ նա ասէ. Տէր, հրաման տուր ինձ երթալ նախ թաղել զհայր իմ ։ Ասէ ցնա Յիսուս. թող զմեռեալսն թաղել զմեռեալս իւրեանց, և դու երթ պատմեա զարքայութիւն Աստուծոյ ։ Ասէ և այլ ոմն. եկից զկնի քո Տէր, բայց նախ հրաման տուր ինձ հրաժարել ի տանէ իմմէ ։ Ասէ ցնա Յիսուս. ոչ ոք արկանէ ձեռն զմաճով և հայիցի յետս, եթէ յաջողեալ իցէ արքայութեանն Աստուծոյ ։ 62 ։

Քարոզ. Խնդրեսցուք ։ Կեցո ։ Աղօթ. Քում ամենազօր ։

---

Յ Ե Ր Ե Կ Ո Յ Ի Ն

ՍԱՂ. ծխթ. Օրհնեցէք զՏէր յօրհնութիւն Նոր ։ 569 ։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի ։ ԺԲ. 22 ։

Առ Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Յայնժամ մատուցաւ (առ Նա) դիւահար մի կոյր և համր, և բժշկեաց զնա. որպէս զի համրն և կոյրն խօսիցի և տեսանիցէ ։ Զարմացան ամենայն ժողովուրդքն և ասէին. միթէ սա՞ իցէ Քրիստոսն որդի Դաւթի ։ Բայց փարիսեցիքն իբրև լուան՝ ասեն. ոչ իւիք հանէ դա զդևս՝ եթէ ոչ բէեղզեբուղաւ իշխանաւն դիւաց ։

Իբրև գիտաց Յիսուս զխորհուրդս նոցա՝ ասէ ցնոսա. ամենայն թագաւորութիւն բաժանեալ յանձն իւր՝ աւերի, և ամենայն քաղաք կամ տուն բաժանեալ յանձն իւր՝ ոչ կացցէ. և եթէ սատանայ զսատանայ հանէ, յանձն իւր բաժանեցաւ. արդ զիա՞րդ կացցէ թագաւորութիւն նորա: Եւ եթէ ես բէեղզեբուղաւ հանեմ զդևս՝ որդիքն ձեր իւ՞ հանիցեն. վասն այնորիկ նոքա եղիցին ձեր դատաւորք: Ապա եթէ հոգւով Աստուծոյ հանեմ ես զդևս, ուրեմն հասեալ է ի վերայ ձեր արքայութիւն Աստուծոյ: Կամ զիա՞րդ կարէ ոք մտանել ի տուն հզօրի՝ և զգործիսն նորա յափշտակել, եթէ ոչ նախ կապիցէ զհզօրն, և ապա զտունն նորա յափշտակիցէ: Որ ոչ ընդ իս է՝ հակառակ իմ է, և որ ոչ ժողովէ ընդ իս՝ ցրուէ: Վասն այդորիկ ասեմ ձեզ. ամենայն մեղք և հայհոյութիւնք թողցին մարդկան, բայց զհոգւոյն հայհոյութիւն մի՛ թողցի: Եւ որ ոք ասիցէ բան զորդւոյ մարդոյ՝ թողցի նմա, բայց որ զհոգւոյն սրբոյ ասիցէ՝ մի՛ թողցի նմա, մի՛ յայսմ աշխարհի և մի՛ ի հանդերձելումն: Կամ արարէք զծառն բարի՝ և զպտուղ նորա բարի, կամ արարէք զծառն չար՝ և զպտուղ նորա չար. քանզի ի պտղոյ անտի ծառն ճանաչի: Ծնունդք իժից, զիա՞րդ կարիցէք բարիս խօսել՝ որ չարքդ էք. քանզի ի յաւելուածոյ սրտի խօսի բերան: Մարդ բարի՝ ի բարի գանձուց սրտի իւրոյ հանէ զբարիս, և մարդ չար՝ ի չար գանձուց սրտի իւրոյ հանէ զչարիս: Բայց ասեմ ձեզ, թէ ընդ ամենայն դատարկ բանի զոր խօսիցին մարդիկ՝ տացեն համար յաւուրն դատաստանի: Զի ի բանից քոց արդարասցիս, և ի բանից քոց պարտաւորեսցիս: 37:

### ՀԱՄԲԱՐՁԻ ԴԿ

Հրեշտակացն դասքն յերկնից: Գ. Եղե+ փոխ: 48:

ՍԱՂ. ԾԾ. Օրհնեցէք զԱստուած ի սրբութեան: 571:

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մարկոսի: Ե. 21:

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ իբրև անց (Յիսուս) միւսանգամ յայն կողմն՝ ժողովեցաւ առ նա ժողովուրդ բազում, և էր առ ծովեզերբն: Եւ ահա մի ի ժողովրդապետացն գայր, որում անուն էր Յայրոս. իբրև ետես զնա՝ անկաւ առ ոտս նորա, աղա-

Digitized by Google

չէր զնա յոյժ և ասէր, թէ դուստր նորա մերձ է ի մահ, զի եկեալ դնիցէ նմա ձեռն, որպէս զի ապրեսցի և կեցցէ։ Եւ գնաց ընդ նմա. երթայր և ժողովուրդ բազում զհետ նորա, և նեղէին զնա։ Եւ կին մի էր ի տեա-տեսութեան արեան զերկոտասան ամ, և յոյժ վշտացեալ ի բազում բժշկաց, և ծախեալ զինչս իւր զամենայն, և չէր ինչ օգտեալ, այլ ևս առաւել զայրացեալ։ Իբրև լուաւ զՅիսուսէ, եկն ի մէջ ամբոխին յետոյ՝ և բուռն եհար զհանդերձէ նորա. քանզի խորհէր ի մտի, թէ միայն մերձեցայց ի հանդերձս նորա՝ փրկեցայց։ Եւ վաղվաղակի ցամաքեցաւ աղբիւր արեան նորա, և գիտաց ի մարմին իւր՝ թէ բժշկեցաւ ի տանջանացն։ Եւ անդէն վաղվաղակի գիտաց Յիսուս յանձն իւր զզօրութիւնն որ ել ի նմանէ, դարձաւ յամբոխն և ասէ. ո՞վ մերձեցաւ ի հանդերձս իմ։ Եւ ասեն ցնա աշակերտքն. տեսանես՝ զի ամբոխդ նեղէ զքեզ, և ասես թէ՝ ո՞վ մերձեցաւ ի հանդերձս իմ։ Եւ շուրջ հայէր տեսանել՝ թէ ո՛ զայն արար։ Եւ կինն զարհուրեալ և դողացեալ վասն որոյ գաղտն արար, քանզի գիտէր զինչ եղև նմա, եկն անկաւ առաջի նորա, և ասաց զամենայն իրսն ստուգութեամբ։ Եւ Յիսուս ասէ ցնա. դուստր, հաւատք քո կեցուցին զքեզ. երթ ի խաղաղութիւն, և եղիջիր ողջ ի տանջանաց քոց։ 34։

Քարոզ. Խնդրեսցուք։ Կեցո։ Աղօթ. Թագաւոր։

# Դ. ՉՈՐԵՔՇԱԲԱԹԻ. ԱՋ

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԲԿ

Կամաւորութեամբ եկիր ի չարչարանս եւ ի ծառայէ ապտակեցար. ‖ Օրհնեմք ըզքեզ Աստուած հարցըն մերոց։ Տարածեցեր ըզձեռըս քո ի վերայ խաչին. եւ ընդ անօրէնըս համարեցար. օրհնեմք։ Որ զմեռանիլ յանձն առեր վասն արարածոց. եւ ի զինաւորէն գեղարդեամբըն խոցեցար. օրհնեմք։

Գ. ԸզՏէր ‖ Ըզնա հոգեւոր երգով բարձր արարէք։ Որ ճոխաբար յօժարութեամբ եկեալ ի նորոգում

եղծեալ մարդոյն. եւ խաչի յանձն առնու ըզմահ ըզ-
նա: Որ էջն ի ստորին կողմ երկրի եւ դողալով սա-
տանեցան դըժոխք. այսօր յարուցեալ վերածեաց ըզնըն-
ջեցեալսն. ըզնա:

ՄՆԾԱՑՈՒՍՑԷ ԲԿ

Մայր լուսոյն Մարիամ անհարսնացեալ օրհնեալդ: 137:

ՈՂՈՐՄՆԱ ԲԿ

Որ յաթոռ փառաց նըստիս Բանդ Աստըւած. խո-
նարհեցար ի հայրական ծոցոյ առնել մարմին ի կու-
սէն. վերականգնելով ի տեղի ըստորանկեալ լուսոյն
գհողացեալ բնութիւնս: Որ կանգնեցեր ըզխաչ քո ի
մէջ երկրի. եւ սովաւ ըզսրովբէափայլ դուըռն դրախ-
տին բացեր նախաստեղծին. կենագործելով ի ճաշակ-
մանէ մահաբեր պըտղոյն: Եւ զօրութեամբ խաչի քո
Քրիստոս. հիմնեցուցեր զկաթուղիկէ եկեղեցի բընա-
կարան սուրբ Երրորդութեանդ. լուսաւորելով ըզհե-
թանոսս ի սմա կերկնաւորի ծնընդեամբ:

ՏԷՐ ՑՆՐԿՆԻՑ ԲԿ

Ըզյարութիւն Քրիստոսի ամենեքեան օրհնեսցուք.
զի նա միայն Աստըւած փառաւորեալ յաւիտեան: Ըզ-
ճառագայթ յարութեանն տեսանելով հրեշտակին. նա
զօրանայր ի պատմել ըզկենսաբեր յարութիւնն: Զայն
աւետեաց լըսէին առաւօտեան սուրբ կանայքն. ի
հրեշտակէն դառնային ուրախութեամբ յառաքեալսն:

Զտիեզերական խընդութեանցն աւետիքս. երա-
նելի կանանցն ուսեալք ի հրեշտակէն աներկիւղ խըն-
դութեամբ և բերկրալից ուրախութեամբ ընթանային
պատմել աշակերտացն ասելով: Զոր մահուն
երկիւղիւ. ընդ մեռեալս համարեալ կարծէաք. նա
ինքնիշխանութեամբ յարուցեալ զմահու եղծ զիշխա-
նութիւն. և կենդանութիւն պարգեւեաց ամզգի

մարդկան ։ Այլ ի բաց մերժեալ ըզհրէական երկիւղին ըզկարծիւն ․ Նախամտածանեցին ի պատիւ տյնօրինին ․ որ մանկունքն եւլոյծ ըզման եւ անմահութեն պարգեւեաց ազգի մարդկան ։

ՍԱՂ․ ԶԴ․ ԿԸ․ Ցոյց մեզ ։ Փխ․ Հաճեցար ։ 567 ։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու ։ Ժ․ 1 ։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Յետ այսորիկ երևեցոյց (Տէր) և այլ ևս եօթանասուն և երկուս, և առաքեաց զնոսա երկուս երկուս առաջի իւր յամենայն քաղաքս և ի տեղիս՝ ուր ինքն երթալոց էր ։ Եւ ասէ ցնոսա ․ հունձք բազում են և մշակք սակաւ ․ արդ աղաչեցէք զՏէր հնձոց, զի հանցէ մշակս ի հունձս իւր ։ Երթայք, ահա առաքեմ զձեզ իբրև զգառինս ի մէջ գայլոց ։ Մի՛ բառնայք քսակ, մի՛ մախաղ, մի՛ կօշիկս ․ և ի ճանապարհի ումեք ողջոյն մի՛ տայցէք ։ Յոր տուն մտանիցէք, նախ ասասջիք թէ ողջոյն տանս այսմիկ ․ եթէ իցէ անդ որդի ողջունի՝ հանգիցէ ի վերայ նորա ողջոյնն ձեր, ապա թէ ոչ՝ ի ձեզ դարձցի ։ Եւ ի նմին տան ագանիջիք, ուտիջիք և ըմպիջիք ի նոցանէ ․ զի արժանի է մշակն վարձու իւրոյ ․ մի՛ փոխիցիք տանէ ի տուն ։ Յոր քաղաք մտանիցէք և ընդունիցին զձեզ, ուտիջիք զինչ առաջի դնիցեն ձեր, և բժշկեսջիք որ ի նմա հիւանդք իցեն ․ և ասասջիք նոցա, մերձեալ է ի վերայ ձեր արքայութիւն Աստուծոյ ։ Իսկ յոր քաղաք մտանիցէք՝ և ոչ ընդունիցին զձեզ, իբրև ելանիցէք ի հրապարակս նորա՝ ասասջիք ․ և զփոշիս որ կառուցեալ է ի քաղաքէ ձերմէ յոտս մեր՝ թօթափեսցուք ի ձեզ ․ բայց զայս գիտասջիք՝ զի մերձեալ է արքայութիւն Աստուծոյ ։ Ասեմ ձեզ, զի Սոդոմայեցւոց ընդարձակագոյն լիցի յաւուրն յայնմիկ՝ քան քաղաքին այնմիկ ։ Վա՜յ քեզ Քորազին, վա՜յ քեզ Բեթսայիդա ․ զի եթէ ի Տիւրոս և ի Սիդոնի եղեալ էին զօրութիւնքն՝ որ եղեն ի ձեզ, վաղուց ևս արդեօք ի խորգ և ի մոխիր նստեալ ապաշխարեալ էր ։ Բայց Տիւրոսի և Սիդոնի ընդարձակագոյն լիցի ի դատաստանի՝ քան ձեզ ։ Եւ դու Կափառնաում, որ մինչև յերկինս բարձրացեալ ես, մինչև ի դժոխս իջցես ։ Որ ձեզ լսէ, ինձ լսէ ․ և որ զձեզ անարգէ, զիս անարգէ ․

Digitized by Google

և որ զիս անարգէ, զառաքիչն իմ անարգէ. և որ ինձ լսէ, լսէ այնմիկ որ զիս առաքեաց։ Դարձան եօթանասուն և երկուքն խնդութեամբ և ասեն. Տէր, և դևք հնազանդին մեզ յանուն քո։ Եւ ասէ ցնոսա. տեսանէի զսատանայ անկեալ յերկնից իբրև զփայլակն։ Ահա ետու ձեզ իշխանութիւն կոխել զօձս և զկարիճս, և զամենայն զօրութիւն թշնամւոյն, և ձեզ ոչ ինչ մեղանչիցեն։ Բայց ընդ այն մի՛ խնդայք՝ թէ այսք հնազանդին ձեզ, այլ խնդացէք՝ զի անուանք ձեր գրեալ են յերկինս։ Ի նմին ժամու ցնծացաւ Յիսուս Հոգւովն սրբով և ասէ. գոհանամ զքէն Հայր, Տէր երկնից և երկրի, զի ծածկեցեր զայս յիմաստնոց և ի գիտնոց, և յայտնեցեր զայս տղայոց. այո Հայր, զի այսպէս հաճոյ եղև առաջի քո։ Ամենայն ինչ տուաւ ինձ ի Հօրէ իմմէ. և ոչ ոք գիտէ թէ ով է Որդի, եթէ ոչ Հայր, և ո է Հայր՝ եթէ ոչ Որդի, և ում կամիցի Որդին յայտնել։ Եւ դարձեալ առանձինն առ աշակերտսն ասէ. երանի աչաց՝ որ տեսանիցեն զոր տեսանէքդ. ասեմ ձեզ, զի բազում մարգարէք և թագաւորք կամեցան տեսանել զոր դուքդ տեսանէք՝ և ոչ տեսին, և լսել զոր լսէքդ՝ և ոչ լուան։ 24։

Քարոզ. Խնդրեսցուք։ Կեցո։ Աղօթ. Քում ամենազօր։

---

## Յ Ե Ր Ե Կ Ո Յ Ի Ն

ՍԱՂ. ՃԽԹ. Օրհնեցէք զՏէր յօրհնութիւն։ 569։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի։ ԺԲ. 38։

Առ Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Յայնժամ պատասխանի ետուն (նմա) ոմանք ի դպրացն և ի փարիսեցւոց՝ և ասեն. վարդապետ, կամիմք նշան ինչ տեսանել ի քէն։ Նա պատասխանի ետ և ասէ ցնոսա. ազգ չար և շնացող՝ նշան խնդրէ, և նշան մի՛ տացի նմա, բայց նշանն Յովնանու մարգարէի։ Զի որպէս էր Յովնան ի փոր կիտին զերիս տիւս և զերիս գիշերս, նոյնպէս եղիցի և որդի մարդոյ ի սիրտ երկրի զերիս տիւս և զերիս գիշերս։ Արք նինուէացիք յարիցեն ի դատաստանի ընդ ազգիս ընդ այսմիկ՝ և դատապարտեսցեն զսա, զի զղջացան ի քարոզութեանն Յովնանու։ Եւ արդ աւասիկ մեծ քան զՅովնան է աստ։ Դշխոյն հարաւոյ յարիցէ ի դատաստանի ընդ ազգիս ընդ այսմիկ՝ և



Digitized by Google

դատապարտեսցէ զսա. զի եկն ի ծագաց երկրի լսել զիմաստութիւն Սողոմոնի ։ Եւ ահա մեծ քան զՍողոմոնի է աստ ։ Այլ յորժամ այսն պիղծ ելանիցէ ի մարդոյ՝ շրջի ընդ անջրդին տեղիս, խնդրէ հանգիստ՝ և ոչ գտանէ. յայնժամ ասէ. դարձայց ի տուն իմ՝ ուստի ելին. և եկեալ գտանէ պարապորդ մաքրեալ և յարդարեալ ։ Յայնժամ երթայ և առնու ընդ իւր եօթն այլ այսս չարագոյնս քան զինքն, և մտեալ բնակէ անդ. և լինի յետինն մարդոյն այնորիկ չար քան զառաջինն ։ Այնպէս եղիցի և ազգիս այսմիկ չարի ։ Մինչդեռ նա ընդ ժողովուրդսն խօսէր, ահա մայր նորա և եղբարք նորա կային արտաքոյ՝ և խնդրէին խօսել ընդ նմա ։ Եւ ասէ ոմն ցնա. ահա մայր քո և եղբարք քո կան արտաքոյ, և խնդրեն խօսել ընդ քեզ ։ Նա պատասխանի ետ այնմիկ որ ասացն ցնա, և ասէ. ո՞վ է իմ մայր, կամ ո՞վ են իմ եղբարք ։ Եւ ձգեալ զձեռն իւր յաշակերտսն ասէ. ահաւասիկ մայր իմ և եղբարք իմ. զի որ առնիցէ զկամս Հօր իմոյ որ յերկինսն է, նա է իմ եղբայր և քոյր և մայր ։ 50 ։

ՀԱՄԲԱՐՁԻ ԱՁ

Որ անճառ էութեամբ Հօրդ ես ։ Դ. Էջէ+ փոխ ։ 29 ։

ՍԱՂ. ԾԾ. Օրհնեցէք զԱստուած ի սրբութեան ։ 571 ։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մարկոսի ։ Ե. 35 ։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Մինչ դեռ (նա) զայն խօսէր, գան ոմանք ի տանէ ժողովրդապետին և ասեն, թէ դուստրն քո մեռաւ, զի՞ ևս աշխատ առնես զվարդապետդ ։ Իսկ Յիսուս իբրև լուաւ զբանն ասացեալ, ասէ ցժողովրդապետն. մի՛ երկնչիր, բայց միայն հաւատա ։ Եւ ոչ զոք եթող ընդ իւր երթալ, բայց միայն զՊետրոս և զՅակովբոս և զՅովհաննէս զեղբայրն Յակովբայ ։ Գայ ի տուն ժողովրդապետին, և տեսանէ ամբոխ յոյժ և լալականս և աղաղակ յոյժ ։ Եւ մտեալ ի ներքս՝ ասէ ցնոսա. զի՞ խռովեալ էք և լայք, մանուկն ոչ է մեռեալ, այլ ննջէ ։ Եւ ծաղր առնէին զնա. և նորա հանեալ արտաքս զամենեսեան, առնու ընդ իւր զհայր մանկանն և զմայր, և զնոսա որ ընդ նմայն էին, և մտանէ ուր դնէր մանուկն ։ Եւ կալեալ զձեռանէ մանկանն՝ ասէ ցնա. տալիթա՝ կումի. որ

Թարգմանի, աղջիկ դու՛ քեզ առեմ արի։ Եւ վաղվաղակի յարեաւ աղջիկն, և գնայր. քանզի էր ամաց իբրև երկոտասանից. և զարմացան մեծաւ զարմանալեօք։ Եւ պատուէր տայր նոցա յոյժ, զի մի՛ ոք գիտասցէ զայն. և ասաց՝ տալ նմա ուտել։ 43։

Քարոզ. Խնդրեսցուք։ Կեցո։ Աղօթք. Թագաւոր։

---

# Դ. ՀԻՆԳՇԱԲԱԹԻ. ԱԿ

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԳԶ

Փառաւորեմք զքեզ Տէր Աստուած հարցն մերոց։ Որ ըզցօղ անապական արեանըն ցօղեցեր տիեզերաց ի վերայ խաչին. || օրհնեմք միշտ և փառաւորեմք։ Որ թաղմամբն երեքօրեայ. յարուցեալ ըզլոյս ծագեցեր տիեզերաց. օրհնեմք։

Գ. ԸզՏէր || օրհնեցէք և բարձր արարէք ըզնա յաւիտեան։ Որ ի բարձունս ես և գերեաց ըզգերութիւն. եւ ետ պարգևս որդւոց մարդկան օրհնեցէք։ Եւ ի մեռեալս ազատ առանց օգնականի. քահանայք օրհնեցէք։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԳԶ

Աստուածածին երկնային դուռն աստուածային։ 379։

ՈՂՈՐՄԵԱ ԳԶ

Էակից հօր. կամաւորութեամբ եկիր ի չարչարանս. զչարչարանս յանձն առեր. խաչիւ համբերելով իջեր ի գերեզման։ Իւղաբերիցն եկեալ ի գերեզման Փըրկչիդ. ըզիւղս անոյշըս բերին. ի խընկել զանապական մարմինդ։ Աւետիս լըւեալ ի հրեշտակէն որ ասէր. Տէր յարեաւ ի մեռելոց. ձեզ կեանս պարգևեաց։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԳԶ

Իւղաբեր եւ սուրբ կանայքն. ողբալով փութապէս եկին ի գերեզման քո Տէր. ի խընկել զանապա-

կան մարմինդ։ Բարբառ աւետաւոր հրեշտակին. որ զո-
չէր առ երջանիկ կանայսըն զի խընդրէք ըզկենդանին
ընդ մեռեալս. քանզի յարեաւ Տէր եւ աւետեաց ըզ-
դըժոխս։ Պատմեալ երանելի կանանցըն զյարութիւն
Տեառն աշակերտացն ուրախացեալք ընթանային. Պե-
տրոս և Յովհաննէս ի կենսատու գերեզմանն։

ՍԱՂ. ՁԴ. կ8. Յոյց մեզ։ Փխ. Հաճեցար։ 567։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու։ Ժ. 25.

ԶՏէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ ահա յարեաւ ոմն օրինական՝ փորձէր զնա և ասէր. վարդապետ, զի՞նչ գործեցից՝ զի զկեանսն յաւիտենականս ժառանգեցից։ Եւ նա ասէ ցնա. յօրէնս զի՞նչ գրեալ է, ո՞րպէս ընթեռնուս։ Նա պատասխանի ետ և ասէ. սիրեսցես զՏէր Աստուած քո յամենայն սրտէ քումմէ, և յամենայն անձնէ քումմէ, և յամենայն զօրութենէ քումմէ, և յամենայն մտաց քոց. և զընկեր քո իբրև զանձն քո։ Եւ ասէ ցնա. ուղիղ ետուր զպատասխանիդ. զայդ արա և կեցցես։ Նա իբրև կամեցաւ զանձն արդարացուցանել՝ ասէ ցՅիսուս. և ո՞վ է իմ ընկեր։ Պատասխանի ետ Յիսուս և ասէ. այր մի իջանէր յԵրուսաղեմէ յԵրիքով, և անկաւ ի ձեռս աւազակաց, որք մերկացին զնա, և վէրս ի վերայ եդին, թողին կիսամահ և գնացին։ Դէպ եղև քահանայի միոջ իջանել ընդ նոյն ճանապարհ, և տեսեալ զնա՝ զանց արար. Նոյնպէս և Ղևտացի մի եկեալ ընդ նոյն տեղի, ետես և զանց արար։ Սամարացի ոմն ճանապարհորդեալ եկն ընդ նոյն առ նովաւ, և տեսեալ զնա՝ գթացաւ. և մատուցեալ պատեաց զվէրս նորա՝ արկեալ ի վերայ ձէթ և գինի, և եդեալ ի վերայ գրաստու իւրոյ՝ ած զնա ի պանդոկի մի, և դարմանեաց զնա։ Եւ ի վաղիւ անդր իբրև ելանէր անտի, հանեալ ետ ցպանդոկապետն երկուս դահեկանս և ասէ. դարման տար դմա, և զոր ինչ ծախեսցես ի դա՝ ի միւսանգամ գալստեան իմում հատուցից քեզ։ Արդ ո՞ յերեցունց ի նոցանէ թուի քեզ մերձաւոր լեալ անկելոյն ի ձեռս աւազակացն։ Եւ նա ասէ. որ արար զողորմութիւնն ի վերայ նորա։ Ասէ ցնա Յիսուս. երթ և դու

Digitized by Google

արա նոյնպէս ։ Եւ եղև ի գալն նոցա՝ և ինքն եմուտ ի գեօղ մի, և կին ոմն անուն Մարթա՝ ընկալաւ զնա ի տան իւրում ։ Եւ նորա էր քոյր մի, որում անուն էր Մարիամ․ որ և եկն նստաւ առ ոտսն Տեառն, և լսէր զբանս նորա ։ Եւ Մարթա զբաղեալ էր ի բազում սպասու․ եկն եկաց առ նմա՝ և ասէ․ Տէր, ոչ ինչ փոյթ է քեզ, զի քոյրդ իմ միայն եթող զիս ի սպասու․ արդ ասա դմա զի օգնեսցէ ինձ ։ Պատասխանի ետ Յիսուս և ասէ․ Մարթա Մարթա, դու հոգաս՝ և զբազում իւիք զբաղեալ ես․ բայց աստ սակաւ ինչ պիտոյ է․ Մարիամ մասն բարի ընտրեաց, որ ոչ բարձցի ի սմանէ ։ 42 ։

Քարոզ․ Խնդրեսցուք ։ Կեցո ։ Աղօթ․ Քում ամենազօր ։

ՑԵՐԵԿՈՑԻՆ

ՍԱՂ․ ճԽԹ․ Օրհնեցէք զՏէր յօրհնութիւն նոր ։ 569 ։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի ։ ԺԳ․ 1 ։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Յաւուր յայնմիկ ելեալ (Յիսուս) ի տանէն՝ նստէր առ ծովեզերն․ և ժողովեցան առ նա ժողովուրդք բազումք, մինչև մտանել նմա ի նաւն և նստել․ և ամենայն ժողովուրդն կայր առ ծովեզերբն ։ Եւ խօսէր ընդ նոսա բազումս առակօք և ասէր․ ահա ել սերմանահան սերմանել, և ի սերմանելն իւրում՝ էր որ անկաւ առ ճանապարհաւ, և եկն թռչուն երկնից և եկեր զնա ։ Եւ այլն անկաւ յապառաժի, ուր ոչ գոյր հող բազում, և վաղվաղակի բուսաւ․ առ ի չգոյէ հիւթոյ երկրին՝ ի ծագել արևու տապացաւ, և զի ոչ գոյին արմատք՝ չորացաւ ։ Եւ այլն անկաւ ի մէջ փշոց, և ելին փուշքն և հեղձուցին զնա ։ Եւ այլն անկաւ յերկիր բարի, և տայր պտուղ․ էր որ հարիւրաւոր, և էր որ վաթսնաւոր, և էր որ երեսնաւոր ։ Որ ունիցի ականջս լսելոյ՝ լուիցէ ։ Եւ մատուցեալ աշակերտքն ասեն ցնա․ ընդէ՞ր առակօք խօսիս ընդ նոսա ։ Նա պատասխանի ետ և ասէ ցնոսա․ քանզի ձեզ տուեալ է գիտել զխորհուրդս արքայութեանն երկնից, և նոցա չէ տուեալ ։ Զի ոյր գուցէ՝ տացի նմա և յաւելցի․ և ոյր ոչն գուցէ՝ և զոր ունիցին բարձցի ի նմանէ ։ Վասն այնորիկ առակօք խօսիմ ընդ նոսա․ զի տեսանեն՝ և ոչ տեսանեն, և լսեն՝ և ոչ լսեն, և ոչ առնուն ի միտ ։ Եւ

կատարի առ նոսա մարգարէութիւնն Եսայեայ՝ որ ասէ. լսելով լուիջիք՝ և մի՛ իմասջիք, և տեսանելով տեսջիք՝ և մի՛ տեսջիք. զի թանձրացաւ սիրտ ժողովրդեանս այսորիկ, և ականջօք իւրեանց ծանուանս լուան. և զաչս իւրեանց կափուցին, զի մի՛ երբեք տեսցեն աչօք՝ և ականջօք լուիցեն՝ և սրտիւք իմասցին, և դարձցին՝ և բժշկեցից զնոսա: Բայց ձեր երանի է աչացդ՝ զի տեսանեն, և ականջաց ձերոց՝ զի լսեն: Ամէն ասեմ ձեզ, զի բազում մարգարէք և արդարք ցանկացան տեսանել զոր տեսանէքդ՝ և ոչ տեսին, և լսել զոր լսէքդ՝ և ոչ լուան: Եւ արդ լուարուք դուք զառակ սերմանացանին. յամենայնէ՝ որ լսէ զբանն արքայութեան և ոչ առնու ի միտ, գայ չարն և յափշտակէ զսերմանեալն ի սիրտ նորա. այն է որ առ ճանապարհաւն սերմանեցաւ: Եւ որ յապառաժին սերմանեցաւ այն է, որ իբրև լսէ զբանն, և վաղվաղակի խնդութեամբ ընդունի զնա. բայց քանզի ոչ ունի արմատս յինքեան, այլ առ ժամանակ մի է, ի լինել նեղութեան և հալածանաց վասն բանին՝ վաղվաղակի գայթագղի: Իսկ որ ի մէջ փշոցն սերմանեցաւ, այն է՝ որ իբրև լսէ զբանն, և հոգք աշխարհիս և պատրանք մեծութեան հեղձուցանեն զբանն, և լինի անպտուղ: Իսկ որ յերկիրն բարի սերմանեցաւ, այն է՝ որ իբրև լսէ զբանն ի միտ առնու, և տայ զպտուղ. է որ հարիւր, և է որ վաթսուն, և է որ երեսուն: 23:

ՀԱՄԲԱՐՁԻ ԱԿ

Հրաշալի զյարութիւն Աստուածորդ: Դ. Երեք տան: 30:

ՍԱՂ. ՃԾ. Օրհնեցէք զԱստուած ի սրբութեան: 571:

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մարկոսի: Զ. 1:

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ ել անտի, եկն ի գաւառ իւր, և երթային զհետ նորա աշակերտքն իւր: Եւ եղև ի շաբաթուն՝ սկսաւ ուսուցանել ի ժողովրդեանն. և բազումք իբրև լսէին՝ զարմանային ընդ վարդապետութիւն նորա, և ասէին. ուստի՞ է սմա այս, կամ զի՞նչ է իմաստութիւնս որ տուեալ է սմա, զի զօրութիւնք այսպիսիք ի ձեռաց սորա լինիցին. ո՞չ սա է մանուկ հիւսանն, և որդին Մարեմայ, եղբայր Յակոբայ և Յովսեայ և Յուդայի և Սի-

Digitized by Google

մուխի, և չիցե՞ն քորքն դորա աստ առ մեզ. և գայթագղէին ի նա։ Եւ ասէ ցնոսա Յիսուս. ոչ է մարգարէ անարգ, բայց եթէ ի գաւառի իւրում, և յազգատոհմի և ի տան իւրում։ Եւ ոչ կարէր անդ և ոչ մի ինչ զօրութիւն առնել, բայց սակաւ հիւանդաց ձեռն եդեալ բժշկէր զնոսա։ Եւ զարմանայր վասն անհաւատութեան նոցա։ 6։

Քարոզ. Խնդրեսցուք։ Կեցո։ Աղօթ. Թագաւոր։

---

# Դ. ՈՒՐԲԱԹ. ԲԶ

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԴՁ

Փառաւորեալ Որդի Աստուծոյ. որ եկիր կամաւ ի չարչարանս ‖ Տէր Աստուած հարցըն մերոց։ Տարածեցեր զամենազօր բազուկս քո ի վերայ խաչին. Եւ երկիրըս հիացեալ սասանեցաւ եւ դողալով երերէր. ի յահէ փառաց քոց Տէր։ Եւ տեսեալ արեգակն զարարիչդ ի վերայ խաչին. չհանդուրժեալ չարչարանաց արարչիդ խաւարեցոյց ըզլոյսն ի մէջօրէի. ի յահէ փառաց քոց Տէր։

Գ. Ըզտէր օրհնեցէք ‖ բարձր արարէք յաւիտեանս։ Եւ զինուորըն գեղարդեամբըն յարձակեալ. խոցեաց զկող կենարարին բարձր։ Ուստի աղբիւր կենդանարար բղխեալ. լըւաց զտիեզերս ի մեղաց բարձր։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԴՁ

Զանճառելի լուսոյ մայր. և զընակարան անսկզբնա։ 93։

ՈՂՈՐՄԵԱ ԴՁ

Ցամենայնի բազումողորմ Աստուած. նայեա յիս գըթութեամբ եւ խնայեա ‖ զի դու միայն ես մարդասէր։ Եւ խաչիւդ քո կենարարաւ պահեա. եւ յարութեամբդ քո փրկեա և ապրեցո զիս։ Եւ ի միւսանգամ ի

զանլըստեան քո Տէր. վերըստին զիս նորոգեա և ապրեցո զի դու միայն ես մարդասէր:

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԴՁ

Այսօր յարութիւն Քրիստոսի. տօնեցէք հաւատացեալք ի մի Աստուած Հայր ամենակալ: Այսօր եւ կանանայքն իւղաբերք աւետիս տալով առաքելոցն. | Օրհնեմն զԱստուած զՀայր ամենակալ: Այսօր եւ հրեշտակք ի յերկինս հոգեւոր հընչմամբ երգով. Օրհնեմն:

ՍԱՂ. ՁԴ. կց. Ցոյց մեզ: Փխ. Հաճեցար: 567:

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու: ԺԱ. 1:

Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի

Եւ եղև ի տեղւոջ ուրեք կալ յաղօթս. և իբրև դադարեաց, ասէ ցնա ոմն յաշակերտացն իւրոց. Տէր ուսո մեզ յաղօթս կալ, որպէս Յովհաննէս ուսոյց աշակերտացըն իւրոց: Ասէ ցնոսա. յորժամ կայցէք յաղօթս, ասասջիք. Հայր մեր. սուրբ եղիցի անուն քո. եկեսցէ արքայութիւն քո. զհաց մեր հանապազորդ տուր մեզ զօրըստօրէն. և թող մեզ զմեղս մեր, զի և մեք թողումք ամենայնի՝ որ պարտիցի մեզ. և մի՛ տանիր զմեզ ի փորձութիւն: Եւ ասէ ցնոսա. ո՞վ է ի ձէնջ՝ որոյ իցէ բարեկամ, և երթիցէ առ նա ի մէջ գիշերի, և ասիցէ ցնա. բարեկամ, տուր ինձ փոխ երիս նկանակս. զի բարեկամ իմ եկն առ իս յուղւոյ, և ոչ ինչ ունիմ զնել առաջի նորա: Եւ նա ի ներքուստ տայցէ պատասխանի և ասիցէ. մի՛ աշխատ առներ զիս, զի դուրքդ փակեալ են, և մանկունքս ընդ ինև կան յանկողնի. ոչ կարեմ յառնել և տալ քեզ: Ասեմ ձեզ. եթէ ոչ յարուցեալ տայցէ նմա վասն բարեկամութեանն, սակայն վասն ժտութեանն յարուցեալ տայցէ նմա՝ զինչ և պիտոյ իցէ: Եւ ես ասեմ ձեզ. խնդրեցէք՝ և տացի ձեզ, հայցեցէք՝ և գտջիք, բախեցէք՝ և բացցի ձեզ. զի ամենայն որ խնդրէ՝ առնու, և որ հայցէ՝ գտանէ, և որ բախէ՝ բացցի նմա: Ո՞ ոք ի ձէնջ հայր՝ խնդրիցէ որդի իւր ձուկն, միթէ փոխանակ ձկանն օձ տայցէ նմա. և կամ խնդրիցէ ձու, միթէ կարիճ տայցէ նմա: Իսկ եթէ դուք որ չարքդ էք՝ գիտէք պարգևս բարիս տալ որդւոց ձերոց,

Digitized by Google

*որչափ ևս առաւել Հայր ձեր յերկնից տացէ բարիս այնոցիկ՝ որ խնդրեննն ի նմանէ ։ 13 ։*

Փոխ. Խնդրեսցուք ։ Կեցո ։ Աղօթ. Քում ամենազօր ։

---

Ց Ե Ր Ե Կ Ո Յ Ի Ն

ՍԱՂ. ճԽԹ. Օրհնեցէք զՏէր յօրհնութիւն նոր ։ 569 ։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի ։ ԺԳ. 24 ։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

*Այլ առակ արկ առ նոսա և ասէ. Նմանեցաւ արքայութիւնն երկնից առն՝ որ սերմանիցէ սերմն բարի յագարակի իւրում. և ի քուն լինել մարդկան՝ եկն թշնամի նորա, և ցանեաց ի վերայ որոմն ի մէջ ցորենոյն՝ և գնաց. և իբրև բուսաւ խոտն և արար պտուղ, ապա երևեցաւ և որոմնն ։ Մատուցեալ ծառայք տանուտեառնն ասեն ցնա. տէր, ո՞չ սերմն բարի սերմանեցեր յագարակին քում, արդ ուստի՞ ունիցի զորոմնն ։ Եւ նա ասէ ցնոսա. այր թշնամի արար զայն ։ Ասեն ցնա ծառայքն. կամի՞ս զի երթիցուք քաղեսցուք զայն ի բաց ։ Եւ նա ասէ ցնոսա. մի՛. գուցէ մինչ քաղիցէք զորոմնն, և ընդ ցորեանն ընդ նմին ի բաց խլիցէք. Թոյլ տուք երկոցունց աճել ի միասին մինչև ի հունձս, և ի ժամանակի հնձոց ասացից ցհնձօղսն. քաղեցէք նախ զորոմնդ, և կապեցէք զայդ խրձունս առ ի յայրել, և զցորեանն ժողովեցէք ի շտեմարանս իմ ։ Այլ առակ արկ առ նոսա և ասէ. Նման է արքայութիւն երկնից հատոյ մանանխոյ, զոր առեալ մարդոյ սերմանեաց յագարակի իւրում. որ փոքր է քան զամենայն սերմանիս, և յորժամ աճիցէ, մեծ է քան զամենայն բանջարս, և լինի ծառ՝ մինչև գալ թռչնոց երկնից և հանգչել յոստս նորա ։ Այլ առակ խօսեցաւ ընդ նոսա և ասէ. Նման է արքայութիւն երկնից խմորոյ, զոր առեալ կնոջ թագոյց ի գրիւս երիս ալեր՝ մինչև ամենայն խմորեցաւ ։ Զայս ամենայն խօսեցաւ Յիսուս առակօք ընդ ժողովուրդսն, և առանց առակի ոչ ինչ խօսէր ընդ նոսա ։ Զի լցցի ասացեալն ի մարգարէէն. բացից առակօք զբերան իմ, բղխեցից զծածկեալսն ի սկզբանէ աշխարհի ։ 35 ։*

ՀԱՄԲԱՐՁԻ ԲՁ

Այսօր զուարճացան տիեզերք ։ Դ. Ե. Ջ. ձնն տօն ։ 33 ։

ՍԱՂ. ՃԾ. Օրհնեցէք զԱստուած ի սրբութեան։ 571։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մարկոսի։ Զ. 7։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ շրջէր շուրջ զգաւառօքն, և ուսուցանէր։ Եւ կոչեաց առ ինքն զերկոտասանսն, և սկսաւ առաքել զնոսա երկուս երկուս. և տայր նոցա իշխանութիւն ի վերայ այսոց պղծոց։ Եւ պատուիրեաց նոցա՝ զի մի՛ ինչ բարձցեն ի ճանապարհ, բայց միայն գաւազան. մի՛ պարկ, մի՛ հաց, մի՛ պղինձ ի գօտիս. այլ ագանել հողաթափս, և մի՛ զգենուցուք, ասէ, երկուս պարեգօտս։ Եւ ասէր ցնոսա. յոր տուն մտանիցէք, անդէն օթևանս կալջիք՝ մինչև ելանիցէք անտի։ Եւ որ ոչ ընկալցին զձեզ, և ոչ լուիցեն ձեզ, յորժամ ելանիցէք անտի՝ թօթափեսջիք զփոշի ոտից ձերոց ի վկայութիւն նոցա։ Եւ ելեալ քարոզէին՝ զի ապաշխարեսցեն. և դևս բազումս հանէին, և օծանէին իւղով զբազում հիւանդս, և բժշկէին զնոսա։ 13։

Քարոզ. Խնդրեսցուք։ Կեցո։ Աղօթ. Թագաւոր։

---

# Դ. ՇԱԲԱԹ. ԲԿ

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԳԶ

Որ յաւիտենից ես Աստուած և Տէր ամենայն կենդանութեան. խոնարհեցար ի չարչարանս համբերելով խաչի և մահու. ‖ զքեզ օրհնեմք Աստուած հարցըն մերոց։ Որ ամենայն բարութեանց ես տէր և ի քրովբէական աթոռ նըստիս. եղար ի նորափոր վիմի անապական մարմնով. զքեզ։ Որ էակից ես Հօր և սուրբ Հոգւոյն. իջեր ի դըժոխս փըրկեցեր զգերեալսն աւերելով ըզմահ. զքեզ։

Գ. Ըզտէր ‖ Երգով օրհնութեամբ. բարձր արարէք յաւիտեան։ Որ ելոյծ ըզզօրութիւնըս դըժոխոց խորհըրդով տընօրէնութեան իւրոյ. Քրիստոս թագաւոր փառաց. փառաւորեալ ի զօրաց զըւարթնոց. եկայք ժողովուրդք երգով։ Որ բանիւ գոյացոյց զարարածս

էակից Բանն ի Հօրէ Քրիստոս. եւ մանուկ խանձի զա-մենայնիւն վասն մեր համբերեալ յաղթեաց մահու իշ-խանութեամբ. Եկայք ժողովուրդք երգով։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԳԶ

Ուրախ լեր Աստուածածին յոյս և փրկութեան մայր. ըզքեզ զընդունող լուսոյ մեծացուցանեմք։ Ըզքեզ զլուսոյ մայր և կոյս. ըզքեզ զգանձըդ կենաց աստուածային. ձայնիւ ցնծութեամբ մեծացուցանեմք։ Մայր սուրբ անճառ լուսոյն. հրեշտակային օրհնու-թեամբ պատուեալ ըզքեզ մեծացուցանեմք։

ՈՂՈՐՄԵԱ ԳԶ

Քրիստոս Աստուած որ տարածեցեր ըզձեռս քո ի խաչին. եւ լուծեր ըզկնիք դատապարտութեան մերոյ. ողորմեա։ Ի խաչին բեւեռեցար. եւ հեղմամբ ա-րեանըդ քո փրկեցեր ըզաւերեալս ի մեղաց. ողոր-մեա։ Թաղեցար ի մէջ երկրի. եւ յերրորդ աւուր յա-րեար ըզդըժոխս աւերեցեր բանիւ. ողորմեա։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԳԶ

Ի խաչանիշ փայտէն դըղըրդեցան դըժոխք. զօրու-թեամբ սուրբ Հոգւոյն նորոգեցաւ երկիր. ո՞վ է սա ‖ որ խափանեաց ըզմահ։ Հրեշտակն աւետէր կուսին Մարիամու. սա է ի սկզբանէ Բանն որ յառաջ քան զյաւիտեանս Որդին. սա՛ է թագաւորն որ։ Յարեաւ եւ յաւուր երրորդի՝ վէմք պատառեցան երկիր շարժեցաւ սասանեցան դըժոխք. սա՛ է կենդանին յաւիտենից Քրիստոս։

ՍԱՂ. ՁԴ. ԿՑ. Ցոյց մեզ։ Փխ. Հանեցար։ 567։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու։ ԺԱ. 14։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ հանէր դեւ մի համր. և եղև յելանել դիւին՝ խօ-սեցաւ համրն, և զարմացան ամենայն ժողովուրդքն։

Digitized by Google

Եւ ոմանք ի նոցանէ ասեն. բէեղզեբուղաւ իշխանաւն դիւաց հանէ դա զդևս։ Եւ այլք փորձէին և նշան յերկնից խնդրէին ի նմանէ։ Իսկ նորա գիտացեալ զխորհուրդս նոցա, ասէ ցնոսա. ամենայն թագաւորութիւն բաժանեալ յանձն՝ աւերի, և տուն բաժանեալ յանձն՝ կործանի։ Ապա եթէ և սատանայ բաժանեցաւ յանձնէ, զիա՞րդ կայցէ թագաւորութիւն նորա. զի ասէք զինէն եթէ բէեղզեբուղաւ իշխանաւն դիւաց հանէ դա զդևս։ Եթէ ես բէեղզեբուղաւ հանեմ զդևս, որդիքն ձեր իւ հանիցեն. վասն այդորիկ նոքին եղիցին ձեր դատաւորք։ Իսկ եթէ մատամբ Աստուծոյ հանեմ զդևս, ապա հասեալ է ի վերայ ձեր արքայութիւն Աստուծոյ։ Յորժամ հզօր վառեալ պահիցէ զտուն իւր, ի խաղաղութեան են ինչք նորա։ Բայց եթէ հզօրագոյն քան զնա ի վերայ եկեալ յաղթեսցէ նմա, զսպառազինութիւնն նորա հանէ յոր յուսացեալ էր, և զաւար նորա բաշխեսցէ։ Որ ոչ է ընդ իս՝ հակառակ իմ է, և որ ոչ ժողովէ ընդ իս՝ ցրուէ։ Յորժամ այսն պիղծ ելանիցէ ի մարդոյ՝ շրջի ընդ անջրդին տեղիս, խնդրէ հանգիստ. և իբրև ոչ գտանէ, ասէ. դարձայց անդրէն ի տուն իմ ուստի ելին։ Եւ գայ գտանէ մաքրեալ և յարդարեալ։ Յայնժամ երթայ և առնու եօթն այլ այսս չար ևս քան զինքն, և մտանէ բնակէ անդ, և լինի յետինն մարդոյն այնորիկ չար քան զառաջինն։ Եւ եղև մինչդեռ խօսէր զայս, ձայն եբարձ կին մի ի ժողովրդենէ անտի և ասէ. երանի է որովայնին՝ որ կրեաց զքեզ, և ստեանցն՝ որ դիեցուցին զքեզ։ Եւ նա ասէ. նա՝ երանի այնոցիկ է, որ լսեն զբանն Աստուծոյ և առնեն։ Եւ ի դիզանել ի վերայ նորա ժողովրրդոցն՝ սկսաւ ասել. ազգս այս՝ ազգ չար է. նշան խնդրէ, և նշան յերկնից ոչ տացի նմա՝ բայց նշանն Յովնանու։ Զի որպէս եղև Յովնան նշան Նինուէացւոց, նոյնպէս եղիցի և որդի մարդոյ ազգիս այսմիկ։ Դշխոյն հարաւոյ յարիցէ ի դատաստանի ընդ արս ազգիս այսորիկ, և դատապարտեսցէ զնոսա. զի եկն ի ծագաց երկրի լսել զիմաստութիւնն Սողոմոնի. և ահա առաւել քան զՍողոմոն է աստ։ Արք Նինուէացիք յարիցեն ի դատաստանի ընդ ազգիս ընդ այսմիկ, և դատապարտեսցեն զսա, զի ապաշխարեցին ի քարոզութեանն Յովնանու. և ահա առաւել քան զՅովնան է աստ։ 32։

Digitized by Google

Քարոզ. Խնդրեսցուք: Կեցո: Աղօթք. Քում ամենազօր:

---

## Ց Ե Ր Ե Կ Ո Ց Ի Ն

ՍԱՂ. ԿԶ. Աստուած ողորմեա մեզ և օրհնեա: 563:

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի: ԺԳ. 36:

Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի

Յայնժամ թողեալ (Յիսուսի) զժողովուրդսն՝ եկն ի տուն. մատեան առ նա աշակերտքն և ասեն. մեկնեա մեզ զառակ որոմանցն ագարակի: Նա պատասխանի ետ և ասէ ցնոսա. որ սերմանէ սերմն բարի՝ է որդի մարդոյ, և ագարակն աշխարհս է. սերմն բարի նոքա են, որ որդիքն արքայութեան են. իսկ որոմնն որդիք չարին են. և թշնամին որ վարեաց զայն՝ սատանայ է, և հունձքն կատարած աշխարհիս է, և հնձօղքն՝ հրեշտակք են: Որպէս ժողովի որոմնն և ի հուր այրի, այնպէս եղիցի ի կատարածի աշխարհիս. առաքեսցէ որդի մարդոյ զհրեշտակս իւր, և ժողովեսցեն յարքայութենէ նորա զամենայն գայթագղութիւնս՝ և զայնոսիկ ոյք գործեն զանօրէնութիւն, և արկցեն զնոսա ի հնոց հրոյ. անդ եղիցի լալ և կրճել ատամանց: Յայնժամ արդարքն ծագեսցեն իբրև զարեգակն յարքայութեան երկնից. որ ունիցի ականջս լսելոյ՝ լուիցէ: Դարձեալ՝ նման է արքայութիւն երկնից գանձի ծածկելոյ յագարակի, զոր գտեալ մարդոյ՝ թագոյց. և ի խնդութենէ անտի երթայ վաճառէ զամենայն ինչ զոր ունի, և գնէ զագարակն զայն: Դարձեալ՝ նման է արքայութիւն երկնից առն վաճառականի, որ խնդրիցէ մարգարիտս գեղեցիկս: Եւ գտեալ մի պատուական մարգարիտ՝ երթեալ վաճառեաց զամենայն զոր ինչ ունէր, և գնեաց զայն մարգարիտ: Դարձեալ՝ նման է արքայութիւն երկնից ուռկանի արկելոյ ի ծով՝ և յամենայն ազգաց ժողովելոյ. զոր՝ իբրև լցաւ՝ հանեալ ի ցամաք, և նստեալ ժողովեցին զբարի բարին յամանս, և զխոտանն ի բաց ընկեցին: Այնպէս եղիցի ի կատարածի աշխարհիս. ելցեն հրեշտակք՝ և մեկնեսցեն զչարս ի միջոյ արդարոց, և արկցեն զնոսա ի հնոց հրոյն. անդ եղիցի լալ և կրճել ատամանց: Ասէ ցնոսա Յիսուս. իմացարո՞ւք զայս ամենայն: Ասեն ցնա. այո Տէր: Եւ նա ասէ ցնոսա. վասն այսորիկ ամենայն

Digitized by Google

դպիր աշակերտեալ արքայութեան երկնից, նման է առն տանուտեառն, որ հանէ ի գանձէ իւրմէ զնոր և զհին ։ 52։

ՄԵՍԵԴԻ Գաղատացւոց

Օրհնեալ որ գաս յանուն Տեառն, օրհնեալ որ գալոց ես ։

Տէր Աստուած մեր երեւեցաւ մեզ. արարէք տօնս ուրախութեան կանխաւ՝ մինչև յանկիւնս սեղանոյ ։

ՀԱՄԲԱՐՁԻ ԴՁ

Թագաւոր գոլով քո յաշխարհ մտեր ի քաղաքն ։ 309։

ՍԱՂ. Ձ. Ցնծացէք առ Աստուած օգնական է ։ 457։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մարկոսի ։ Ջ. 14.

Վասն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ։

Եւ լուաւ արքայ Հերովդէս. քանզի յայտնի եղև ։ 562։

Քարոզ. Խնդրեսցուք ։ Կեցո ։ Աղօթ. Թագաւոր ։

---

# Ե. ԿԻՐԱԿԷ. ԳՁ

Ցայս կիւրակէիս, և կամ առ ամին բերէ, է Մայիսի 7, Երեւման սուրբ խաչին տօն է ։

## Ի ԳԻՇԵՐԻ

ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԳՁ. Օգնական ընդունելի եղև ։ 16։

Ալէլուիա Յարութեան է յայնէն ։

## ՅԱՐՈՒԱԻՕՏՈՒ

ՀԱՐՑ ԽԱՁԻ ԴՁ

Այսօր ընդ ամպըս լուսաւորս երեւեալ. Նըշան տէրունական խաչին. բոցանիւ փայլմամբ տեսողացն ընթացեալ ի քաղաքըն պատմէին. ‖ ըզնըշան քո Տէր Աստուած հարցըն է մերոյ ։ Յարեւելից փայլեաց ճառագայթ սուրբ խաչին. արեգակնակերպ ճառագայթիւք. միաբան տեսանիւր ի յերրորդ ժամու. Նըշան։ Ապաւէն ցուցաւ մեզ սուրբ խաչըն փրկչական զի յաղթեսցուք նովաւ անօրէն թըշնամւոյն. կնիք հաւատութեան ընկալեալ ի յանձին ըս մեր. ըզնըշան.

Digitized by Google

Գ. ԸզՏէր օրհնեցէք բարձր արարէք ըզնա յաւի-
տեան։ Այսօր նշան սուրբ խաչին ի յերկնից երեւեալ
եկայք նոր ժողովուրդք միաբանութեամբ ըզՏէր օրհ։
Այսօր ի սուրբ Գողգոթա ցոլացեալ երեւիւր տեսիլ
ահաւոր ժողովոյն. քահանայք երգով ըզՏէր օրհ։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԴՁ

Մայր լուսոյ Մարիամ սուրբ կոյս. որ ըզլոյսն առ ի
Հօրէ ծնար մարմնով. եւ եղեր արեւելք արեգականն
արդարութեան. ‖ Հոգեւոր երգով ըզքեզ սրբուհի
մեծացուցանեմք։ Քերովբէից գերագոյն էին աթոռ.
եւ ծառ կենաց անմահական պտղոյն. տապանակ կը-
տակի Բանին և սափոր ոսկի երկնային մանանային.
Հոգեւոր։ Քեւ բացաւ սրովբէափակ դուռըն դրախտին.
եւ քեւ տուաւ մեզ փայտն անմահութեան. զոր ի նմա
զենեալն անմահ այսօր յերկնից լուսաւորեաց. Հոգեւոր։
Գէշերէ խաչէ ——. Այսօր եկեալ կամաւ Տէրն ի խաչ։

ՈՂՈՐՄԵԱ ԴՁ

Ի յերկնից երեւեալ նշանն յաղթութեան. այ-
սօր. հեթանոսաց ծագեաց լոյսն ողորմութեան։ Եւ
բազմութեան ժողովոյն. տեսանէին այսօր. սուրբ
ըզխաչըն լուսոյ ճառագայթիւք զարդարեալ։ Ընդ
երեւումըն սրբոյ խաչի քո Քրիստոս այսօր. Երու-
սաղէմ մեծապէս պանծացաւ յոյժ։ Եւ ըզծագումըն
լուսոյ աստուածային նշանի քոյ. ճառագայթիւք տե-
սանէին բազմութեան ժողովոյն։ Ամենայաղթ զօրու-
թիւն խաչի քո Քրիստոս. որ ցուցաւ ի յօգնութիւն ընդ-
դէմ թշնամւոյն. պատերազմեալ զօրութեամբ քով։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԴՁ

Գաւազան զօրութեան ըզխաչ քո եդեր մեզ Քրիս-
տոս եւ սովաւ յաղթեսցուք անօրէն թշնամւոյն։ Սա

Digitized by Google

է զէն յաղթութեան սրբոյ արեամբ Որդւոյն Աստուծոյ. ‖ Եւ սովաւ յաղթեսցուք անօրէն թշնամւոյն: Սա է աթոռ տէրունեան. եւ ի սմա է բազմեալ Քրիստոս Որդին Աստուծոյ. Եւ: Սա է սեղան սրբութեան եւ ի սմա է պատարագեալ Քրիստոս գառն Աստուծոյ. Եւ: Սա է կարապետ յաւուր գալստեան փրկչին. Եւ պսակ պարծանաց հաւատացելոց. Եւ սովաւ:

Ասացուած Երգ

Եսուր երկիւղածաց քոց Նշան, զի ապրեսցին յերեսաց աղեղան:

Որպէս փրկեցան սիրելիք քո, կեցո աջով քով եւ լուր մեզ:

Քարոզ Ասասցուք

Իսկ չնչի Սուրբ Աստուածին Մող. փրկել: Սոր. վան լսելի: Քահ. Օրհնութիւն: Եւ եկանեն խաչն և ամենայն զօրութեամբ է դարս տեսլով

ՇԱՐԱԿԱՆ ԽԱՉԻ ԴՋ

Զօրութիւն սուրբ խաչի քո Քրիստոս. որ կանգնեցեր ի փրկութիւն աշխարհի. ‖ սա պահեսցէ զմեզ յամենայն փորձութենէ: Քանզի ի սմա բարձրացար Աստուած. եւ ի սմա հեղեր զպատուական սուրբ զարիւնդ. սա: Եւ զգեօ միւսանգամ զգալուստդ. նշանաւ խաչի քո ցուցեր աշխարհի. սա:

ՁԿՆԻ ՍԱՂՄՈՍ ՂԶ. Է ՌԽ

Կ8 · Պատմեսցեն երկինք զարդարութիւն Նորա, տեսին ամենայն ժողովուրդք զփառս Նորա:

ՓԽ · Տէր թագաւորեաց՝ ցնծասցէ երկիր, ուրախ եղիցին կղզիք բազումք:

Ամպ և մէգ շուրջ է զնովաւ, յիրաւունս և յարդարութիւն ուղղեալ է աթոռ Նորա:

Հուր առաջի Նորա գնասցէ, այրեսցէ շուրջ զթշնամիս Նորա:

Երևեցան փայլատակունք Նորա տիեզերաց, ետես և սասանեցաւ երկիր:

Լերինք որպէս մոմ հալեցին յերեսաց Տեառն, յերեսաց Տեառն ամենայն երկիր ։

Պատմեցեն երկինք զարդարութիւն Նորա, տեսին ամենայն ժողովուրդք զփառս Նորա ։

Ամաչեսցեն ամենեքեան ոյք երկիր պագանեն կռոց, և ոյք պարծին ի դրօշեալս իւրեանց ։

Երկիր պագցեն Նմա ամենայն հրեշտակք Նորա, զի լուաւ և ուրախ եղև Սիոն, և ցնծասցեն դստերք Յուդայ վասն իրաւանց քոց Տէր ։

Զի դու բարձրեալ ես ի վերայ ամենայն երկրի, յոյժ բարձրացար ի վերայ ամենայն կռոց ։

Ոյք սիրէք զՏէր՝ ատեցէք զչարութիւն. պահէ Տէր զանձինս սրբոց իւրոց, ի ձեռաց մեղաւորի փրկեսցէ զնոսա ։

Լոյս ծագեաց արդարոց, ուղղոց սրտից եղև ուրախութիւն ։

Ուրախ եղերուք արդարք ի Տէր, խոստովան եղերուք յիշատակի սրբութեան Նորա ։

Ալէլուիա. ալէլուիա ։

Պօղոսի առաքելոյն ի Գաղատացւոց առաջին թղթոյն է ընթերցուածս: Զ. 14:

Այլ ինձ քաւ լիցի պարծել, բայց միայն ի խաչն ։ 474 ։

Զոյնէ— Ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա ։

Նշանեցաւ առ մեզ լոյս երեսաց քոց, և ետուր ուրախութիւն սրտից մերոց ։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի ։ ԻԴ. 27 ։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս ասէ.

Զի որպէս փայլակն՝ որ ելանէ յարևելից և երևի մինչև յարևմուտս, այնպէս եղիցի գալուստն որդւոյ մարդոյ ։ Զի ուր գէշն իցէ, անդր ժողովեսցին արծուիք ։ Վաղվաղակի յետ Նեղութեան աւուրցն այնոցիկ՝ արեգակն խաւարեսցի, և լուսին ոչ տացէ զլոյս իւր, և աստեղք անկցին յերկնից և զօրութիւնք երկնից շարժեսցին ։ Եւ ապա երևեսցի նշան որդւոյ մարդոյ յերկինս, և յայնժամ կոծեսցին ամենայն ազգք երկրի, և տեսցեն զորդի մարդոյ եկեալ ի վերայ ամպոց երկնից զօրութեամբ և փառօք բազմօք ։ Եւ առաքեսցէ զհրեշտակս իւր փողով մեծաւ, և ժողովեսցեն զընտրեալս Նորա ի չորից



Digitized by Google

Հողմոց՝ ի ծագաց երկնից մինչև ի ծագս նոցա։ Ի թզե- նւոյ անտի ուսարուք զառակն. զի յորժամ նորա ոստքն կակղասցին և տերևն ցցուիցի, գիտէք թէ մերձ է ա- մառն. նոյնպէս և դուք՝ յորժամ տեսանիցէք զայս ամե- նայն, գիտասջիք թէ մերձ է ի դուրս։ Ամէն ասեմ ձեզ՝ եթէ ոչ անցցէ ազգս այս, մինչև այս ամենայն եղիցի։ Երկինք և երկիր անցցեն, և բանք իմ մի՛ անցցեն։ Բայց վասն աւուրն այնորիկ և ժամու՝ ոչ ոք գիտէ, ոչ հրեշ- տակք երկնից և ոչ Որդի, բայց միայն Հայր։ 36։

Ե— [illegible] ։

Ձէնի Քառ. Սուրբ խաչ։ Առ. Պահպան։ Ե— [illegible]՝ [illegible]

ՍԱՂ. ՋԴ. Կ Ց. Ցոյց մեզ։ Փխ. Հաճեցար։ 567։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու։ ԺԱ. 33։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս ասէ.

Ոչ ուրուք լուցեալ ճրագ՝ դնէ ի թաքստեան, (և ո՛չ ընդ գրուանաւ.) այլ ի վերայ աշտանակի, զի որ մտա- նեն՝ լոյս տեսանիցեն։ Ճրագ մարմնոյ ակն է. յորժամ ակնն առատ է, ամենայն մարմինն լուսաւոր եղիցի. և երբ ակն չար է, և մարմինն խաւարին եղիցի. արդ զգոյշ լեր, գուցէ լոյսդ որ ի քեզ է՝ խաւար իցէ։ Եթէ մարմինդ քո ամենայն լուսաւոր է, և չգուցէ մասն ինչ խաւարին, եղիցի լուսաւոր ամենայն. որպէս յորժամ ճրագն նշուլիւք լուսաւորիցէ զքեզ։ Եւ մինչ դեռ խօսէր զայս, աղաչէր զնա ոմն փարիսեցի՝ զի ճաշ կերիցէ առ նմա. և նա մտեալ բազմեցաւ։ Իբրև ետես փարիսեցին՝ զարմացաւ զի նախ ոչ մկրտեցաւ յառաջ քան զճաշ։ Ա- սէ ցնա Տէր. այժմ դուք փարիսեցիք զարտաքին բա- ժակին և զպնակին սրբէք, և ներքինն ձեր լի է յափշ- տակութեամբ և չարութեամբ. անմիտք, ո՞չ ապաքէն որ զարտաքինն արար՝ և զներքինն նոյն արար։ Բայց աղէ զարժանն իսկ տուք ողորմութիւն, և ահա ամենայն սուրբ է ձեր։ Այլ վա՜յ ձեզ փարիսեցւոց, զի տասանորդէք զանանուխ և զփեգենայ և զամենայն բանջար, և անցա- նէք զիրաւամբք և զսիրովն Աստուծոյ. զայս արժան էր առնել՝ և զայնու ոչ անցանել։ Վա՜յ ձեզ փարիսեցւոց, զի սիրէք զբարձրագահս ի ժողովուրդս, և զնախողջոյնս ի հրապարակս։ Վա՜յ ձեզ, զի էք դուք իբրև զգերեզ-

Digitized by Google

մանս անյայտս, և մարդիկ գնան ի վերայ և ոչ գիտեն։ Պատասխանի ետ ոմն յօրինականացն և ասէ ցնա. վարդապետ, զայդ բանս ասելով և զմեզ թշնամանես։ Եւ նա ասէ. և ձեզ վա՜յ օրինականացդ, զի բառնայք մարդկան բեռինս դժուարակիրս, և դուք մատամբ միով ի բեռինսն ոչ մերձենայք։ Վա՜յ ձեզ, զի շինէք զշիրիմս մարգարէիցն, և հարքն ձեր սպանին զնոսա. ապա ուրեմն վկայէք, եթէ կամակիցք էք գործոց հարցն ձերոց. զի նոքա կոտորեցին զնոսա, և դուք զգերեզմանս նոցա շինէք։ Վասն այսորիկ իմաստութիւնն Աստուծոյ ասաց. առաքեցից ի նոսա մարգարէս և առաքեալս, և ի նոցանէ սպանանիցեն և հալածիցեն. զի խնդրեսցի արիւն ամենայն մարգարէից հեղեալ ի սկզբանէ աշխարհի՝ յազգէ յայդմանէ, յարենէն Աբելի մինչև յարիւնն Զաքարիայ կորուսելոյ ընդ սեղանն և ընդ տաճարն. այո ասեմ ձեզ, խնդրեսցի յազգէ յայդմանէ։ Վա՜յ ձեզ օրինականացդ, զի թաքուցանէք զփականս գիտութեանն. դուք ոչ մտանէք, և որ մտանելոցն են՝ արգելուք։ Եւ ի խօսելն զայս ամենայն առ նոսա առաջի ամենայն ժողովրդեանն՝ զամօթի հարկանէին. և սկսան դպիրքն և փարիսեցիք ըղչարել և գրգռել ընդ նմա վասն բազում իրաց, և սպասել որսալ ինչ բանս ի բերանոյ նորա, զի չարախօսեսցեն զնմանէ։ Որովք ի կուտել բիւրաւորաց ժողովրդեանն՝ մինչև կոխել զմիմեանս, սկսաւ ասել ցաշակերտսն իւր. նախ զգոյշ լերուք անձանց ի խմորոյ փարիսեցւոցն, որ է կեղծաւորութիւն։ Զի ոչ ինչ է ի ծածուկ՝ որ ոչ յայտնեսցի, և գաղտնի՝ որ ոչ ծանիցի։ Վասն զի զոր ինչ ասիցէք ի խաւարի՝ լսելի լիցի ի լոյս, և զոր յունկանէն խօսեցարուք ի շտեմարանս՝ քարոզեսցի ի վերայ տանեաց։ Բայց ձեզ ասեմ սիրելեաց իմոց. մի՛ զարհուրիցիք յայնցանէ որ սպանանեն զմարմին, և յետ այնորիկ աւելի ինչ ոչ ունիցին առնել։ Այլ ցուցից ձեզ յումմէ երկընչիցիք. երկնչիջիք յայնմանէ՝ որ յետ սպանանելոյ ունի իշխանութիւն արկանել ի գեհեն. այո ասեմ ձեզ, յայնմանէ երկնչիջիք։ Ո՞չ ապաքէն հինգ ճագ երկուց դանգաց վաճառի, և մի ի նոցանէ ոչ է մոռացեալ առաջի Աստուծոյ։ Այլ ձեր և ամենայն իսկ հեր գլխոյ թուեալ է. մի՛ երկնչիք, զի քան զբազում ճագս լաւ էք դուք։ Ասեմ ձեզ, զի ամենայն որ խոստովանեսցի յիս առաջի

Digitized by Google

*մարդկան, և որդի մարդոյ խոստովանեսցի զնմանէ առաջի հրեշտակաց Աստուծոյ։ Եւ որ ուրասցի զիս առաջի մարդկան, ուրացեալ լիցի առաջի հրեշտակաց Աստուծոյ։ Եւ ամենայն որ ասէ բան զորդւոյ մարդոյ՝ թողցի նմա, բայց որ զՀոգին սուրբ հայհոյիցէ՝ մի՛ թողցի նմա։ Այլ յորժամ տանիցին զձեզ ի ժողովուրդս և ի պետութիւնս և յիշխանութիւնս, մի՛ հոգայցէք՝ որպէս թէ զի՛նչ պատասխանի տայցէք կամ զի՛նչ ասիցէք. զի Հոգին սուրբ ուսուսցէ ձեզ ի նմին ժամու՝ զինչ պարտ իցէ խօսել։ ԺԲ. 12։*

Երգ. Նորաստեղծ։ Քաղ. Խնդր։ Կեցո։ Աղ. Քուեմ ամէ։

---

## ՅԵՐԵԿՈՅԻՆ

ՍԱՂ. ճԽԹ. Օրհնեցէք զՏէր յօրհնութիւն։ 569։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի։ ԺԳ. 53։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

*Եւ եղև իբրև կատարեաց (Յիսուս) զառակս զայսոսիկ՝ փոխեցաւ անտի։ Եւ եկեալ ի գաւառ իւր՝ ուսուցանէր զնոսա ի ժողովրդեանն նոցա, մինչև զարմանալ նոցա և ասել. սմա ուստի՞ իցէ այս իմաստութիւն և զօրութիւնք։ Ո՞չ սա է հիւսանն որդի. ո՞չ մայր սորա կոչի Մարիամ, և եղբարք սորա Յակովբոս և Յովսէս և Սիմովն և Յուդա. և քորք սորա ո՞չ ամենեքեան առ մեզ են. և արդ ուստի՞ է սմա այս ամենայն։ Եւ գայթագղէին ի նա։ Եւ Յիսուս ասէ ցնոսա. չիք մարգարէ անարգ՝ եթէ ոչ յիւրում գաւառի և յիւրում տան։ Եւ ոչ արար անդ զօրութիւնս բազումս վասն անհաւատութեան նոցա։ 58։*

ՀԱՄԲԱՐՁԻ ԳԶ

Փառաւորեալ է քո յարութիւնդ։ Գ. Ե. Միջ տան։ 39։

ՍԱՂ. ճԾ. Օրհնեցէք զԱստուած ի սրբութեան։ 571։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մարկոսի։ Զ. 30։

Առ Տէրն մեր Յիսուս Քրիստոս

*Ժողովեցան առաքեալքն (առ Յիսուս), և պատմեցին նմա զամենայն ինչ զոր արարին և զոր ուսուցին։ Եւ ասէ ցնոսա Յիսուս. եկայք դուք առանձինն յանապատ տեղի, և հանգիջիք սակաւ մի. զի էին բազումք որ եր-*

Digitized by Google

թային և գային, և հաց անգամ չժամանէին ուտել ։ Եւ գնացին նաւու յանապատ տեղի առանձինն ։ Եւ տեսին զնոսա զի երթային, և ղգացին բազումք. և հետի յամենայն քաղաքաց խուռն ընթանային անդր, և մերձենային առ նոսա ։ Եւ ելեալ ետես ամբոխ բազում, և գթացաւ ի նոսա, զի էին իբրև ոչխարք՝ որոց ոչ իցէ հովիւ. և սկսաւ ուսուցանել զնոսա յոյժ ։ Եւ իբրև բազում ժամ եղև, մատուցեալ աշակերտքն ասէին. տեղիս անապատ է, մինչ դեռ աւուր կայ, արձակեա զժողովուրդդ, զի երթեալ շուրջ յագարակս և ի գեօղս՝ գնեսցեն իւրեանց զինչ ուտիցեն, զի աստ ինչ ուտել ոչ ունին ։ Նա պատասխանի ետ և ասէ ցնոսա. դուք տուք դոցա ուտել ։ Ասեն ցնա. երթիցուք գնեսցուք երկերիւր դահեկանի հաց, և տացուք դոցա ուտել ։ Ասէ ցնոսա. քանի՞ նկանակ ունիք, երթայք տեսէք ։ Իբրև գիտացին, ասեն ցնա. հինգ, և երկուս ձկունս ։ Եւ հրամայեաց նոցա բազմել երախանս երախանս ի վերայ դալար խոտոյ. և բազմեցան դասք դասք, ուր հարիւր և ուր յիսուն ։ Եւ առեալ զհինգ նկանակն և զերկուս ձկունսն՝ հայեցաւ յերկինս՝ օրհնեաց, մանրեաց զնկանակսն, և ետ ցաշակերտսն զի արկցեն նոցա, և զերկուս ձկունսն բաշխեաց ամենեցուն ։ Կերան և յագեցան. և բարձին զնշխարսն երկոտասան սակառի լի, և ի ձկանց անտի. և էին որք կերանն՝ իբրև արք հինգ հազար ։ 44 ։

Քարոզ. Խնդրեսցուք ։ Կեցո ։ Աղօթ․. Թագաւոր ։

---

# Ե․ ԵՐԿՈՒՇԱԲԱԹԻ․ ԳԿ

## ՑԱՌԱՒՕՏՈՒ

### ՀԱՐՑ ԳՁ

Կամաւորութեամբ եկիր ի չարչարանս Տէր. և ի վերայ նախաստեղծին ըզմեռանել յանձն առեր. Տէր Աստուած հարցն մերոց ։ Անպարտական մահու որպէս մահապարտ. դատապարտեալ ի խաչ ելեր վասն ազգի մարդկան. Տէր ։ Անմահութեանց տըւող Քրիստոս Աստուած. ի գերեզման իջեր յարուցիչըդ մեռելոց. Տէր ։

Գ · Ըզ Տէր օրհնեցէք ‖ բարձր արարէք զբարձեալն ի վերայ խաչին : Որ կանգնեացն ըզքառանկիւնն աշ-խարհն խաչին . յաղագս քառակողմ աշխարհի պա-տարագեալ . յորմէ սեղանոյ բուրեաց անուշահոտ հո-գին . բարձր : Որ փոխանակ մեղսասէր մանկացն պըղտորոյն . պարգեւեաց մեզ կերակուր արքայութեան . ի կեանսըն յաւիտենից նորոգելով ըզմեզ բարձր :

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԳՁ

Սուրբ զԱստուածածինն . օրհնութեամբ մեծացու : 141 :

ՈՂՈՐՄԵԱ ԳՁ

Լոյս ճշմարիտ որ ի Հօրէ առաքեցար . առեր մար-մին պարագրել ի կուսէն ոչ մեկնելով յանքննին յէու-թենէ . ‖ Բանդ Աստուած ողորմեա : Որ անհաս ես յարարածոց . եւ քան զամենայն միտս գերազանց . զոր երկինք ոչ բաւէին տանել յարգանդի կուսին կրե-ցար . Բանդ : Զչարչարանս յանձն առեր . ախտակիր հողեղինացս եղեր . վասն մերոյ փրկութեան ի գե-րեզմանի եղար . անկորուստ պահելով զարարածս Բանդ :

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԳՁ

Փառաւորեալ է քո յարութիւնդ : Որ յարեարդ ի մեռելոց յաւուր երրորդի . Քրիստոս Որդի Ա-ստուծոյ . փառք : Որ յահեղ բարբառոյ յարութեան քո Տէր երկիր շարժեցաւ . վէմք պատառեցան Քրիս-տոս Որդի Աստուծոյ . փառք :

Ի ձայն ահեղ յարութեան քո Տէր զարհուրեցան զինուորացըն դասք . յարփիափայլ հրեշտակին բե-մին . եւ դողալով շարժեցաւ երկիր : Առաւօտեան սուրբ կանանցըն դիտելով ըզվիմափոր գերեզմանն . բերելով զիւղս անուշս ի յօծումըն կենարար մար-մնոյն . անպարագիր էականութեանն : Եւ տեսեալ

ըղձերովքն վերանըստեալ ի վիմին. տարփողելով սըր-
բուհեմյն. ասէ դարձիր ողջոյն տուր փողոցն. քան-
զի յարեաւ որ յառաջն ասաց ։

ՍԱՂ. ՋԴ. ԿՑ. Ցոյց մեզ ։ Փխ. Հանեցար ։ 567 ։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու ։ ԺԲ. 13 ։

Առ Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Ասէ ոմն ի ժողովրդենէն (ցնա). վարդապետ, ասա ցեղ-
բայր իմ՝ բաժանել ընդ իս զժառանգութիւնն ։ Եւ նա
ասէ ցնա. այր դու, ո՞ կացոյց զիս դատաւոր կամ բա-
ժանարար ի վերայ ձեր։ Եւ ասէ ցնոսա. տեսէք և ըզ-
գոյշ լերուք յամենայն ագահութենէ, զի ոչ եթէ ի մթե-
րից ընչից ուրուք իցեն կեանք նորա։ Խօսեցաւ առ նո-
սա առակ մի և ասէ. առն ուրումն մեծատան եառուն
անդք տոհմականս. և խորհէր ի միտս իւր և ասէր, զի՞
գործեցից՝ զի ոչ գոյ տեղի ուր ժողովեցից զարդիւնս իմ։
Եւ ասէ. գիտեմ զինչ արարից. քակեցից զշտեմարանս
իմ՝ և ես մեծամեծս շինեցից, և անդր ժողովեցից զցո-
րեան և զամենայն բարութիւնս իմ, և ասացից ցանձն
իմ. անձն, ունիս բազում բարութիւնս համբարեալ ամաց
բազմաց. հանգիր՝ կեր արբ և ուրախ լեր։ Ասէ ցնա Աս-
տուած. անմիտ, յայսմ գիշերի զոգիդ ի քէն ի բաց պա-
հանջիցեն, իսկ զոր պատրաստեցերն ո՞ւմ լինիցի ։ Նոյն-
պէս և որ գանձէ անձին, և ոչ յԱստուած մեծանայցէ ։
Ասէ ցաշակերտսն իւր. վասն այդորիկ ասեմ ձեզ. մի՛
հոգայք ընդ ոգւոյ՝ թէ զինչ ուտիցէք. և մի՛ ընդ մար-
մնոյ՝ թէ զինչ զգենուցուք։ Զի ոգի առաւել է քան ըզ-
կերակուր, և մարմին քան զհանդերձ։ Հայեցարուք ընդ
ագռաւս, զի ոչ սերմանեն և ոչ հնձեն, որոց ոչ գոն
շտեմարանք և ոչ համբարանոցք, և Աստուած կերակրէ
զնոսա. ո՞րչափ ևս առաւել զձեզ՝ որ լաւ էք քան զթըռ-
չունս։ Ո՞վ ի ձէնջ առ հոգալ՝ կարիցէ յաւելուլ ի հասակ
իւր կանգուն մի. իսկ արդ եթէ ի փոքուն չէք բաւա-
կան՝ վասն այլոցն զի՞ հոգայցէք։ Հայեցարուք ընդ շու-
շանն՝ որպէս աճէ, ոչ ջանայ և ոչ նիւթէ. ասեմ ձեզ,
և ոչ Սողոմոն յամենայն ի փառսն իւր զգեցաւ իբրև
զմի ի նոցանէ։ Իսկ եթէ զխոտն որ այսօր ի բացի է և
վաղիւ ի հնոց արկանելի՝ Աստուած այնպէս զգեցուցանէ,

Digitized by Google

ո՞րչափ ևս առաւել զձեզ, թերահաւատք։ Եւ դուք մի՛ խնդրէք՝ զինչ ուտիցէք կամ զինչ ըմպիցէք, և մի՛ զբաղ-նուք. զի զայն ամենայն հեթանոսք աշխարհի խնդրեն. այլ ձեր Հայր գիտէ զի պիտոյ է այն ամենայն։ Բայց խնդրեցէք զարքայութիւն Աստուծոյ, և այն ամենայն յաւելցի ձեզ։ 31։

Քարոզ. Խնդրեսցուք։ Կեցո։ Աղօթ․. Քում ամենազօր։

---

ՅԵՐԵԿՈՅԻՆ

ՍԱՂ. ՃԽԹ. Օրհնեցէք զՏէր յօրհնութիւն Նոր։ 569։

Սրբոյ Աւետարանին որ ըստ Մատթէոսի։ ԺԴ. 1։

Վասն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։

Յայնմ ժամանակի լուաւ Հերովդէս չորրորդապետ զլուր Յիսուսի, և ասէ ցծառայս իւր. Նա է Յովհաննէս Մկրտիչ, նա յարեաւ ի մեռելոց, և վասն այնորիկ զօ-րութիւնք լինին նովաւ։ Քանզի Հերովդէս կալեալ զՅով-հաննէս՝ կապեաց զնա և եդ ի բանտի վասն Հերովդիայ կնոջ Փիլիպպոսի եղբօր նորա. զի ասէր ցնա Յովհան-նէս. չէ արժան քեզ ունել զդա։ Եւ կամէր զնա սպա-նանել, բայց երկնչէր ի ժողովրդենէ անտի. քանզի իբրև զմարգարէ ունէին զնա։ Եւ իբրև եղեն ծնունդք Հերով-դի, կաքաւեաց դուստրն Հերովդիայ ի մէջ բազմականին. և հաճոյ թուեցաւ Հերովդի, ուստի և երդմամբ խոստա-ցաւ տալ նմա զինչ և խնդրեսցէ։ Եւ նա յառաջագոյն խրատեալ ի մօրէ իւրմէ, տուր ինձ, ասէ, այսր ի վե-րայ սկտեղ զգլուխն Յովհաննու Մկրտչի։ Եւ տրտմեցաւ թագաւորն, բայց վասն երդմանցն և բարձակցացն՝ հրա-մայեաց տալ նմա։ Եւ առաքեաց գլխատեաց զՅովհան-նէս ի բանտի, և բերաւ գլուխ նորա սկտեղբ և տուաւ աղջկանն, և տարաւ առ մայր իւր։ Եւ մատուցեալ ա-շակերտքն նորա բարձին զմարմինն և թաղեցին, և ե-կեալ պատմեցին Յիսուսի։ 12։

ՀԱՄԲԱՐՁԻ ԳԿ

Ջքո յարութիւնդ օրհնեմք։ Գ. Դ. Քեզ պատ։ 42։

ՍԱՂ. ԾԾ. Օրհնեցէք զԱստուած ի սրբութեան։ 571։

Սրբոյ Աւետարանին որ ըստ Մարկոսի։ Զ. 45։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ նոյնժամայն ձեպեաց զաշակերտսն մտանել ի նաւ,

Digitized by Google

և յառաջագոյն քան զնա երթալ յայն կոյս ի Բեթսայի-դա, մինչ ինքն զժողովուրդսն արձակիցէ. և հրաժա-րեալ ի նոցանէ՝ ել ի լեառն կալ յաղօթս: Եւ իբրև ե-րեկոյ եղև՝ էր նաւն ի մէջ ծովուն, և ինքն ի ցամաքի: Եւ տեսս զնոսա հողմակոծեալս ի վարելն, զի էր հողմն ընդդէմ նոցա. և զչորրորդ պահու գիշերոյն գայ առ նոսա գնալով ի վերայ ծովուն, և կամէր զանց առնել առ նոքօք: Նոքա իբրև տեսին զի գնայր ի վերայ ծո-վուն, համարեցան թէ առաչօք ինչ լինիցի, և զաղա-ղակ բարձին. քանզի ամենեքեան տեսին զնա՝ և խռո-վեցան: Եւ նա անդէն վաղվաղակի խօսեցաւ ընդ նոսա և ասէ. քաջալերեցարուք, ես եմ՝ մի՛ երկնչիք. և ել ի նաւն առ նոսա, և դադարեաց հողմն: Եւ առաւել ևս յիմարեալ էին ի միտս իւրեանց, և զարմանային յոյժ. քանզի և ի վերայ հացին ոչ իմացան, զի էր սիրտ նո-ցա թմբրեալ: Եւ իբրև անցին յայն կոյս, եկին յերկիրն Գեննեսարէթ: Եւ իբրև ելին ի նաւէ անտի, իսկ և իսկ ծանեան զնա արք տեղւոյն այնորիկ. և ընթացեալ այսր անդր ընդ ամենայն գաւառն, սկսան մահճօք բերել ըզ-հիւանդս, ուր լսէին թէ անդ իցէ: Եւ ուր և մտանէր՝ ի գեօղս կամ ի քաղաքս կամ յագարակս, ի հրապարակս դնէին զախտաժէտս, և աղաչէին զնա՝ զի գոնէ ի քղանցս հանդերձից նորա մերձենայցեն. և որ միանգամ մերձե-ցանն՝ փրկեցան: 56:

Քարոզ. Խնդրեսցուք: Կեցո: Աղօթ. Թագաւոր:

---

# Ե. ԵՐԵՔՇԱԲԱԹԻ. ԴՁ

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

### ՀԱՐՑ ԳՁ

Արարիչդ արարածոց Քրիստոս աս սա ւ յածմ ր. ի խաչին բեւեռեալ ես ծծու զինաւորըն զերդարդեամբըն յարձակեալ ըզկող ղ քո խոցեաց || Տէր Աստուած հար-ցըն մերոց: Կենդանի յաւիտենից Քրիստոս աս սա ւ յ-ածմ ր. ի գերեզմանի եդար ես ծծու պահապանքըն պա-հէին ըզզգուշութեամբ ըզգե րեզման քո Տէր: Յարեար ի մեռելոց Քրիստոս աս սա ւ յածմ ր. ըզդըժոխս աւերեալ

Digitized by Google

եւ կենդանութիւն պարգեւեցեր արարածոց քո-յով յարութեամբդ Տէր Աստուած հարցըն մերոց :

Գ. Ըզտէր ‖ Ըզնա օրհնելով բարձր արարէք յա-ւիտեան: Զոր կարապետըն Յովհաննէս մարգարէից ի դըժոխս. աւետարանէր ըզզալըստ արեգականն ար-դարութեան. ըզնա : Որում ըսպասէին արգելեալքն ի մեղսաւէր բանտին. աւետեցուցիչ յուսոյ գալըս-տեան Աստուածորդւոյն ի յերկնից. ըզնա : Որոյ եկեալ կատարեաց զմարգարէիցն ըզտեսութիւն. աւերելով զդրունըս դըժոխոց եւ զզօրութիւն մահու. ըզնա :

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԳԶ

Լոյս լուսոյ մայր և կենարար Բանին բնակա : 469 :

ՈՂՈՐՄԵԱ ԳԶ

Իջեր յերկնից ի Հօրէ և մարմնացար ի Կուսէն. համ-բերող Փրկիչ վասըն մեր ըզմահ ճաշակեցեր: Ե-կիր ի չարչարանըս չարչարանացըն լուծիչ. խաչե-ցար թաղեցար. եղար ի գերեզմանի Քրիստոս Աս-տուած մեր: Եւ յերրորդ աւուր յարեար ամենակարող Տէր. պարգեւելով աշխարհի զխաղաղութիւն. եւ զմեծ զողորմութիւն :

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԳԶ

Հրաշալի յարութիւնն ըզպանծապանսըն զարհուրեցոյց. եւ հրեշտակն ի յերկնից իջեալ ի ձայն ահեղ յարու-թեան Աստուածորդւոյն. կանանցն աւետէր յարեաւ Աստուած : Ի ձայնէ հրեշտակին զըւարճացան տըրտ-մազգեաց կանայքն. եւ դարձան խընդութեամբ ետուն աւետիս առաքելոցն եթէ յարեաւ Նախապատմեալն : Եկայք լուսազգեացք. յօրհնութիւն Նոր օրհնեսցուք ըզՏէր. քանզի մարմինն որ ի մէնջն էառ ի հրեշտա-կաց երկըրպագութիւն առնու. ի սրովբէից և ի քրով-բէից :

Digitized by Google

Տուք ըզփառս ի բարձունս. Թագաւորին յաւիտենից. որ փրկեաց զազգս որդւոց մարդկան ի ծառայութենէ թշնամւոյն. ‖ օրհնութիւն առաքողին ի բարձունս։ Նա ինքնիշխանութեամբ բազմեցաւ ի վերայ խաչին. կապեաց զիշխանըն մեղսասէր. զմահու գերեալըն յԱդամայ կենագործեաց ի կեանս անմահ. օրհնութիւն։ Նախայաւիտեան Որդին փառակից Հօր և սուրբ Հոգւոյն. դընի ի նոր գերեզմանի. նոր նորոգել զմեզ ըզհընացեալս մեղօք. օրհնութիւն։ Հրաթեւեան սերովբէն նըստելով ի վերայ վիմին. համբառնէր փող յարութեանըն Տեառն. պակուցեալ պահապանացն յահէն եղեն որպէս մեռեալ. օրհն։ Համօրդս արա եւ ըզմեզ Տէր. ընդ սըրբոց քոց առաքելոցն. որք արժանի եղեն տեսանել ըզքեզ ի յարութեան քո. արժանաւորեա Տէր տեսանել ըզքեզ ի միւսանգամ քո գալըստեանն. օրհնութիւն առաքողին ի բարձունս։

ՍԱՂ. ՁԴ. ԿՑ. Ցոյց մեզ։ Փխ. Հաճեցար։ 567։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու։ ԺԲ. 32։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս ասէ.

Մի՛ երկնչիր հօտ փոքրիկ. զի հաճեցաւ Հայր։ 239։

Քարոզ. Խնդրեսցուք։ Կեցո։ Աղօթ. Քում ամենազօր։

---

ՅԵՐԵԿՈՅԻՆ

ՍԱՂ. ՃԽԹ. Օրհնեցէք զՏէր յօրհնութիւն։ 569։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի։ ԺԴ. 13։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ իբրև լուաւ (Յիսուս), գնաց անտի նաւու յանապատ տեղի առանձինն։ Իբրև լուան ժողովուրդքն՝ գնացին զհետ նորա հետի ի քաղաքաց անտի։ Եւ իբրև ել՝ ետես ժողովուրդ բազում, գթացաւ ի նոսա, և բժշկեաց

Digitized by Google

զհիւանդս նոցա ։ Իբրև ընդ երեկս եղև , մատեան առ նա աշակերտքն՝ և ասեն ․ տեղիս անապատ է , և օր՝ տարաժամեալ , արձակեա զժողովուրդդ՝ զի երթիցեն շուրջ ի շէնսն , գնեսցեն իւրեանց կերակուրս ։ Եւ ասէ Յիսուս ․ ոչ ինչ պիտոյ է դոցա երթալ ․ դուք տուք դոցա ուտել ։ Եւ նոքա ասեն ցնա ․ ոչ ինչ ունիմք աստ , բայց հինգ նկանակ և երկուս ձկունս ։ Եւ ասէ ցնոսա ․ բերէք այսր զայն ։ Եւ հրամայեաց բազմեցուցանել զժողովուրդն ի վերայ խոտոյ ․ և առեալ զհինգ նկանակն և զերկուս ձկունսն՝ հայեցաւ յերկինս , օրհնեաց ․ և եբեկ և ետ ցաշակերտսն զնկանակսն ․ և աշակերտքն ժողովրդոյն ։ Կերան ամենեքեան և յագեցան , և բարձին ըզնշխարս կոտորոցն երկոտասան սակառի լի ։ Եւ որք կերանն՝ էին արք իբրև հինգ հազար , թող զկանայս և զմանկտի ։ 21 ։

ՀԱՄԲԱՐՁԻ ԴՁ

Զյարութիւն Աստուած ։ Ե ․ Զ ․ Է ․ ԽՆ տուն 45–47 ։

ՍԱՂ ․ ՃԾ ․ Օրհնեցէք զԱստուած ի սրբութեան ։ 571 ։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մարկոսի ։ Է ․ 1 ։

Առ Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ ժողովեցան (առ նա) փարիսեցիքն և ոմանք ի դպրացն որ եկեալ էին յԵրուսաղեմէ ։ Եւ տեսեալ զոմանս յաշակերտացն նորա՝ զի խառնակ ձեռօք , այս ինքն է՝ անլուայ ուտէին հաց , բամբասեցին ։ Զի փարիսեցիքն և ամենայն հրեայք , եթէ ոչ բռնալիր լուանան զձեռս , հաց ոչ ուտեն ․ քանզի ունին զաւանդութիւն ծերոցն ․ և ի հրապարակէ մտեալ՝ եթէ ոչ նախ մկրտիցին , ոչ ուտեն ․ և այլ ինչ բազում է՝ զոր ընկալան ունել , մկըրտութիւնս բաժակաց և ստոմանաց և պղնձեաց և մահճաց ։ Ապա հարցանեն ցնա փարիսեցիքն և դպիրք , թէ ընդէ՞ր աշակերտքն քո ոչ գնան ըստ աւանդութեան ծերոցն , այլ խառնակ ձեռօք հաց ուտեն ։ Նա պատասխանի ետ և ասէ ցնոսա , թէ բարւոք մարգարէացաւ Եսայի վասն ձեր կեղծաւորաց , որպէս ասաց ․ ժողովուրդս այս շրթամբք մեծարէ զիս , և սիրտք նոցա հեռացեալ ի բացեայ են յինէն ․ զուր պաշտեն զիս ․ ուսուցանեն վարդապետութիւնս՝ զմարդկան պատուիրեալս ։ Թողեալ զպատուիրանն Աստուծոյ , ունիք զմարդկան աւանդութիւն ։

Եւ ասէ ցնոսա. բարւոք խոտէք զպատուիրանն Աստուծոյ, զի զձեր աւանդութիւնն հաստատիցէք։ Զի Մովսէս ասէ. պատուեա զհայր քո և զմայր. և որ չարախօսեսցէ զհօրէ կամ զմօրէ, մահու վախճանեսցի։ Եւ դուք ասէք, եթէ ասիցէ ոք ցհայր կամ ցմայր՝ կորբան, որ է պատարագ, զոր յինէն օգտեսցիս. և ոչ ևս տայք թոյլ նմա չառնել ինչ հօրն կամ մօր։ Եւ անարգէք զբանն Աստուծոյ ձերով աւանդութեամբն զոր աւանդեցէք. և բազում ինչ այլ՝ որ այսմ նման է՝ առնէք։ Եւ կոչեալ առ ինքն զամենայն ժողովուրդն՝ ասէ ցնոսա. լուարուք ինձ ամենեքեան և ի միտ առէք. ոչ ինչ արտաքուստ ի մարդ մտեալ՝ եթէ կարիցէ պղծել զնա, այլ որ ելանէ ի նմանէ՝ այն է որ պղծէ զմարդն. որ ունիցի ականջս լսելոյ՝ լուիցէ։ 16։

Քարոզ. Խնդրեսցուք։ Կեցո։ Աղօթ+. Թագաւոր։

---

# Ե. ՉՈՐԵՔՇԱԲԱԹԻ. ԴԿ

## ՅԱՐԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԳԿ

Անճառելի բնութիւն և բան Հօր. մարմնացար ի հայրական ծոցոյ. եւ առեր մարմին ի սըրբոյ կուսէն. Սուրբ Աստըւած հարցըն մերոց։ Եկեալդ ի փըրկութիւն մեզ Թագաւոր անմահ. յանձն առեր ըզմահ խաչի եւ իջեր ի գերեզման անապական. սուրբ։ Եւ յարուցեալ ի մեռելոց երեքօրեայ. լոյս ծագեցար տիեզերաց ճշմարտութեամբ լուծեր զերկունս մահու. սուրբ։

Գ. ԸզՏէր օրհնեցէք բարձր արարէք զԹագաւորն ամենեցուն. ճշմարիտն Հայր միշտ եւ յաւիտեան։ Զյարուցեալն ի մեռելոց Քրիստոս Աստուած. ժողովուրդք առաւել բարձր արարէք ըզնա յաւիտեան։ Զանապական լոյսն ի Հօրէ ծագեալ սուրբ Հոգին. քահանայք ընդ սերովբէսըն գովեցէք եւ առաւել։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԳԿ

ԶԱստուածածինն և զմիշտ կոյսն անդադար օրհ։ 95։

Digitized by Google

էր միայն։ Եւ նաւն մեկնեալ էր ի ցամաքէն բազում ասպարիսօք՝ ծփեալ յալեացն. քանզի ընդդէմ էր հողմն։ Եւ ի չորրորդում պահու գիշերոյն եկն առ նոսա Յիսուս գնալով ի վերայ ծովուն։ Իբրեւ տեսին զնա աշակերտքն զի գնայր ի վերայ ծովուն՝ խռովեցան, և ասեն՝ թէ առ աչօք ինչ իցէ. և առ ահին աղաղակեցին։ Եւ վաղվաղակի խօսեցաւ ընդ նոսա Յիսուս և ասէ. քաջալերեցարուք, ես եմ՝ մի՛ երկնչիք։ Պատասխանի ետ նմա Պետրոս և ասէ. Տէր, եթէ դու ես, հրամայեա ինձ գալ առ քեզ ի վերայ ջրոցս։ Եւ նա ասէ. եկ։ Եւ իջեալ ի նաւէն Պետրոս՝ գնաց ի վերայ ջուրցն, և եկն առ Յիսուս։ Եւ տեսեալ զհողմն սաստիկ՝ երկեաւ. և իբրեւ սկսաւ ընկղմել՝ աղաղակեաց և ասէ. Տէր փրկեա զիս։ Եւ վաղվաղակի Յիսուս ձգեաց զձեռն իւր կալաւ զնա և ասէ. թերահաւատ, ընդէ՞ր երկմտեցեր։ Եւ իբրեւ ելին ի նաւն՝ հանդարտեաց հողմն։ Եւ որ ի նաւին էին՝ մատեան երկիր պագին նմա և ասեն. արդարեւ որդի Աստուծոյ ես դու։ Եւ անցեալ եկին ի ցամաք ի Գեննեսարեթ. և իբրեւ ծանեան զնա արք տեղւոյն այնորիկ, առաքեցին ընդ ամենայն գաւառն՝ և ածին առ նա զամենայն հիւանդս։ Եւ աղաչէին զնա, զի գոնէ միայն ի քղանցս հանդերձի նորա մերձեսցին. և որ միանգամ մերձեցանն՝ փրկեցան։ 36։

ՀԱՄԲԱՐՁԻ ԴԿ

Հրեշտակ քո Տէր որ գյար։ Դ. Ն. Զ. Է. Ը։ 48–49։

ՍԱՂ. ԾԾ. Օրհնեցէք զԱստուած ի սրբութեան։ 571։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մարկոսի։ Է. 17։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ իբրեւ եմուտ ի տուն յամբոխէ անտի, հարցանէին զնա աշակերտքն վասն առակին։ Եւ ասէ ցնոսա. այդպէս և դուք անմիտք էք. ո՞չ իմանայք, եթէ ամենայն որ արտաքուստ ի ներքս մտանէ ի մարդ՝ ոչ կարէ զնա պղծել. զի ոչ եթէ ի սիրտ նորա մտանէ, այլ յորովայն, և արտաքս ելանէ, և սրբէ զամենայն կերակուրսն։ Եւ ասէր, թէ որ ինչ ի մարդոյն ելանէ՝ այն պղծէ զմարդ. զի ի ներքուստ ի սրտէ մարդկան խորհուրդք չարութեան ելանեն. շնութիւնք, պոռնկութիւնք, գողութիւնք, սպանութիւնք, ագահութիւնք, չարութիւնք, նենգու-

Digitized by Google

*թիւնք, գիջութիւն, չարակնութիւն, հայհոյութիւն, ամբարտաւանութիւն, անզգամութիւն։ Այս ամենայն չարիք ի ներքուստ ելանեն, և պղծեն զմարդ։ Եւ անտի յարուցեալ եկն ի սահմանս Տիւրոսի և Սիդոնի. և մըտեալ ի տուն՝ ոչ ումեք կամէր յայտնել, և ոչ կարաց ծածկել։ Լուաւ կին մի զնմանէ, որոյ դուստր իւր նեղեալ էր յայսոյ պղծոյ. եկն անկաւ առաջի նորա. և կինն էր հեթանոս, փիւնիկ ասորի յազգէ. և աղաչէր զնա՝ զի զդեւն հանցէ ի դստերէ նորա։ Եւ Յիսուս ասէ ցնա. Թոյլ տուր՝ նախ յագեսցին մանկունք. զի ոչ է բարւոք առնուլ զհաց մանկանց և արկանել շանց։ Նա պատասխանի ետ և ասէ. Տէր, և շունք ի փշրանաց սեղանոյ մանկանցն կերակրին։ Եւ ասէ ցնա. վասն այդր բանի՝ երթ, ել դեւն ի դստերէ քումմէ։ Գնաց ի տուն իւր, և եգիտ ելեալ զդեւն. և զդուստրն, զի անկեալ դնէր ի մահճս։ 30։*

Քարոզ. Խնդրեսցուք։ Կեցո։ Աղօթ+. Թագաւոր։

---

# Ե․ ՀԻՆԳՇԱԲԱԹԻ․ ԱՋ

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԳԿ

*Նախայաւիտենան Որդի փառակից Հօր և սուրբ Հոգւոյն. որ միշտ յանճառ փառս բարեբանիս ի վերին զօրացդ. ‖ Ընդ քեզ օրհնեմք Աստուած հարցըն մերոց։ Եղեալ մարդ ճշմարիտ եկիր կամաւ ի չարչարանս. եւ բարձեր ընդ փայտ խաչի անպարտականդ մահու. ընդ քեզ։ Ի գերեզմանն իջեր խափանիչ մահու. երեքօրեայ յարուցեալ լոյս ծագեցեր ստուերանըստացս ընդ քեզ։*

*Գ․ Ընդ Տէր օրհնեցէք ‖ բարձր արարէք զնա յաւիտեան։ Զթագաւորըն Քրիստոս. որ վասըն մեր յանցանաց ըզմահ ճաշակեաց բարձր։ Զէակից Բանըն Հօր. որ երեքօրեայ թաղմամբ զդըժոխս աւերեաց. բարձր։*

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԳԿ

*Ամենագովելի. եւ քան զերկինըս բարձրագոյն որ*



Digitized by Google

զանհասանելի ըզՏէրըն յորովայնի քում կրեցեր. եւ ցընծութիւն աշխարհի ծընար. ‖ վասն որոյ ամենեքեան ըզքեզ միշտ մեծացուցանեմք: Ամենապայծառ բերկրեալ միշտ կոյս որ զանբաւելի ըզԲանն անճառաբար յըղացար. եւ ըզմարմնացեալն Աստուած ծընանելով ի քէն. վասն: Ի լեռնէ վէմն առանց ձեռին հատեալ. Դանիէլ գուշակեաց զանսերմըն ծնունդ քո. հարսն երկնաւոր. մայր եւ յետ ծընընդեան մընալով կոյս. վասն:

ՈՂՈՐՄԵԱ ԳԿ

Անըսկիզբըն Բանն անճառելի ծընունդ. որ առաքմամբ Հօր իջեր ի յերկնից վասըն մերոյ փըրկութեան. ‖ զքեզ աղաչեմք. ողորմեա քո արարածոց: Որ անեղ աստուածութեամբ և անփոփոխելի բնութեամբ. ի կուսէն ծընար նախաստեղծին կերպամբ. եւ եկիր կամաւ ի չարչարանս. զքեզ: Ի խաչին բեւեռեցար կամաւ Հօր եւ սուրբ Հոգւոյն. եւ իջեր ի գերեզման անմահ բնութիւն. եւ յարեար ի մեռելոց Քրիստոս. զքեզ:

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԳԿ

Ըզքո յարութիւնդ օրհնեմք մարդասէր. ‖ աղաղակելով Տէր փառք քեզ: Զոր օրհնեն սերովբէքն. եւ զոր քերովբէքն. աղաղակելով: Անդադար բերանով. անհանգիստ բարբառով. աղաղակելով:

Առաւել եւ մեր զօրհնութիւնըս հրեշտակացն երգեմք եւ մեք ասեմք փառօք յարութեան քո Տէր: Որ խաչեցար վասըն մեր թաղեցար եւ յարեար զմեզ ազատեցեր ի մեղաց: Սուրբ Աստըւած սուրբ եւ հըզօր սուրբ անմահ թագաւոր:

ՍԱՂ. ՁԴ. Կ8. Ցոյց մեզ: փխ. Հանեցար: 567:

Սրբոյ Աւետարանին որ ըստ Ղուկասու : ԺԳ . 10 :

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ ուսուցանէր ի միում ժողովրդանոցացն ի շաբաթս. և ահա կին մի՝ զոր ունէր այս հիւանդութեան ամս ութուտասն, և էր կարկամեալ, և ոչ կարէր ամենևին ի վեր հայել: Եւ տեսեալ զնա Յիսուսի, կոչեաց առ ինքն և ասէ ցնա. կին դու, արձակեալ ես ի հիւանդութենէ քումմէ: Եւ եդ ի վերայ նորա ձեռն, և առժամայն ուղղեցաւ, և փառաւոր առնէր զԱստուած: Պատասխանի ետ ժողովրդապետն՝ ցասուցեալ թէ ընդէ՛ր ի շաբաթու բժշկեաց Յիսուս, և ասէ ցժողովուրդն. վեց օր է՝ յորս արժան է գործել, յայնս եկայք բժշկեցարուք, և մի՛ յաւուր շաբաթու: Պատասխանի ետ նմա Տէր և ասէ. կեղծաւորք, իւրաքանչիւր ոք ի ձէնջ ի շաբաթու ո՞չ արձակէ զեզն իւր կամ զէշ ի մսրոյ, և տանի տայ ջուր: Իսկ այս դուստր Աբրահամու էր զոր կապեաց սատանայ՝ ահաւադիկ ութուտասն ամ, ո՞չ էր արժան արձակել ի կապանաց անտի ի շաբաթու: Եւ զայս իբրև ասաց, յամօթ լինէին ամենեքին որ հակառակն կային նմա. և ամենայն ժողովուրդն ուրախ լինէր ի վերայ ամենայն փառաւորութեանցն՝ որ գործէին ի նմանէ: Եւ ասէր. ո՞ւմ նման է արքայութիւն Աստուծոյ, և որո՞ւմ նմանութեան նմանեցուցից զնա: Նման է հատոյ մանանխոյ, զոր առեալ մարդոյ արկ ի պարտէզ իւր. աճեաց և եղև ծառ, և թռչունք երկնից բնակեալ էին յոստս նորա: Եւ դարձեալ ասէ. ո՞ւմ նմանեցուցից զարքայութիւն Աստուծոյ. նման է խմորոյ, զոր առեալ կնոջ թաքոյց յալեր երից գրուաց՝ մինչև խմորեցաւ ամենայն : 21 :

Քարոզ. Խնդրեսցուք : Կեցո : Աղօթք. Քում ամենազօր:

---

ՅԵՐԵԿՈՅԻՆ

ՍԱՂ. ՃԽԹ. Օրհնեցէք զՏէր յօրհնութիւն նոր : 569 :

Սրբոյ Աւետարանին որ ըստ Մատթէոսի : ԺԵ . 1 :

Առ Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Յայնժամ մատեան (առ Յիսուս) որ յԵրուսաղեմէ փարիսեցիքն և դպիրք և ասեն. ընդէ՞ր աշակերտքն քո անցանեն զաւանդութեամբ ծերոցն, զի ոչ լուանան զձեռս

Digitized by Google

յորժամ հաց ուտեն։ Նա պատասխանի ետ և ասէ ցնո-
սա. Իսկ դուք ընդէ՞ր անցանէք զպատուիրանաւն Աստու-
ծոյ վասն ձերոյ աւանդութեանն։ Զի Աստուած ասաց.
պատուեա զհայր քո և զմայր, և որ բամբասէ զհայր կամ
զմայր՝ մահու վախճանեսցի. և դուք ասէք. որ ասիցէ
ցհայր իւր կամ ցմայր իւր, թէ պատարագ է՝ զոր յինէն
օգտիցիս, և ոչ պատուիցէ զհայր իւր և զմայր իւր. և
խոտէք զբանն Աստուծոյ վասն ձերոյ աւանդութեանն։
Կեղծաւորք, բարւոք մարգարէացաւ ի վերայ ձեր Եսայի
և ասէ. Ժողովուրդս այս շրթամբք պատուէ զիս, և
սիրտք իւրեանց հեռացեալ մեկուսի է յինէն, զուր պաշ-
տեն զիս. ուսուցանեն վարդապետութիւնս՝ զմարդկան
պատուիրեալս։ Եւ կոչեցեալ առ ինքն զժողովուրդն
ասէ ցնոսա. լուարուք և ի միտ առէք. ոչ որ ինչ մտանէ
ընդ բերան՝ պղծէ զմարդ, այլ որ ինչ ելանէ ի բերանոյ՝
այն պղծէ զմարդ։ Յայնժամ մատուցեալ աշակերտացն
Նորա ասեն ցՆա. գիտե՞ս զի փարիսեցիքն իբրև լուան
զբանն՝ գայթագղեցին։ Նա պատասխանի ետ Նոցա և
ասէ. ամենայն տունկ՝ զոր ոչ տնկեաց Հայր իմ երկնա-
ւոր, խլեսցի։ Թոյլ տուք զնոսա. կոյրք են՝ կուրաց ա-
ռաջնորդք. կոյր կուրի յորժամ առաջնորդէ՝ սխալէ, և
երկոքին ի խորխորատ անկանին։ Պատասխանի ետ Նմա
Պետրոս և ասէ. մեկնեա մեզ զառակս զայս։ Ասէ Յի-
սուս. տակաւին և դուք անմիտք էք։ Եւ ո՞չ իմանայք՝
եթէ ամենայն որ մտանէ ի բերան, յորովայն երթայ և
արտաքս ելանէ. իսկ որ ելանէ ի բերանոյ՝ ի սրտէ ան-
տի գայ, և այն պղծէ զմարդ։ Զի ի սրտէ ելանեն խոր-
հուրդք չարք՝ սպանութիւնք, շնութիւնք, պոռնկութիւնք,
գողութիւնք, սուտ վկայութիւնք, հայհոյութիւնք. այս
ամենայն է՝ որ պղծէ զմարդ, այլ անլուայ ձեռօք ուտել
ոչ պղծէ զմարդ։ 20։

ՀԱՄԲԱՐՁԻ ԱԶ

Սոսկալի տեսիլ հրեշտակին։ Ե. Զ. վեց տուն։ 29։

ՍԱՂ. ՃԾ. Օրհնեցէք զԱստուած ի սրբութեան։ 571։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մարկոսի։ Է. 31։

Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի

Եւ ելեալ միւսանգամ ի սահմանացն Տիւրոսի և Սի-
դոնի, և եկն ի ծովեզրն Գալիլեացւոց ի մէջ սահմանացն

ի Դեկապոլիս։ Եւ բերին առաջի նորա խուլ մի և համր, և աղաչեցին՝ զի ձեռն դիցէ ի վերայ նորա։ Եւ առեալ զնա մեկուսի յամբոխէ անտի՝ արկ զմատունս իւր ընդ ականջս նորա՝ և եթուք անդր. և կալաւ զլեզուէ նորա, հայեցաւ յերկինս՝ յոգւոց եհան և ասէ. եփփաթա, որ է՝ բացիր։ Եւ նոյնժամայն բացան լսելիք նորա, և լուծան կապանք լեզուի նորա, և խօսէր ուղիղ. և պատուիրեաց նոցա՝ զի մի՛ ումեք ասիցեն։ Եւ որչափ նա պատուիրէր նոցա, նոքա ևս առաւել քարոզէին, և ևս քան զևս զարմանային և ասէին. զամենայն ինչ բարւոք գործեաց սա, զի խլից լսել տայ, և համերց խօսել։ 37։

Քարոզ. Խնդրեսցուք։ Կեցո։ Աղօթք. Թագաւոր։

---

# Ե. ՈՒՐԲԱԹ. ԱԿ

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

### ՀԱՐՑ ԳՁ

Այսօր զենաւ մեզ պատարագ. անարատ գառն Աստուծոյ ի վերայ խաչին. հաճելի Հօր եւ սուրբ Հոգւոյն ‖ Աստըւած հարցըն մերոց։ Այսօր բացաւ մեզ սրովբէափակ դուռըն դրախտին հրաւիրելոցս ի կոչումն արքայական սեղանոյ տէրունեան մարմնոյ եւ արեան Աստուծոյ։ Եւ հրաշալի յարութեամբ քո Քրիստոս. տիեզերք ամենայն նորափետուր զարդարեալ. մատանեն ի յառագաստ ընդ փեսայիդ Քրիստոսի. Աստուծոյ։

Գ. Ըզ Տէր օրհնեցէք ‖ Առաւել բարձր արարէք ըզնա յաւիտեան։ Զադամային ըզգեցեալ մարմին. ի քառանկիւն սեղան խաչին բարձրացեալ. սերովբէք սարսեալ դողային. առաւել։ Որ ըզցօղ անապական արեանն. ի կողմանցս աղբերբն արբոյց տիեզերաց. ժողովուրդք հեթանոսաց. առաւել։

### ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԳԿ

Մայր և կոյս աղախին Քրիստոսի որ բարեխօսդ։ 246։

### ՈՂՈՐՄԵԱ ԳԿ

Որ տըրտմահաղորդ քո չարչարանօք խաչին. մայ-

Digitized by Google

տեցեր ըզմարդն ի տըրտմազգեաց փայտէն. եւ ի մեղսաճաշակ պըտղոյն. ‖ Քրիստոս Աստուած եւ մեզ ողորմեա։ Որ մահուամբ քո կենդանի և մեռելութեամբըն յերկրի. նորոգեցեր զարձեալ զաշխարհս և զհնացեալ բնութիւնս. Քրիստոս։ Որ երեքօրեայ յարութեամբըդ քո և համբարձմամբըդ յերկինըս. վերածեր ըզմարդն առ կենաց փայտն եւ յանմահական ճաշակն. Քրիստոս։

ՏԷՐ ՑՆՐԿՆԻՑ ԴԿ

Տեսիլ փայլականաձեւ զուարթնոյն. ի վիմին հընչեցեալ առ խընկաբերս կանանցն. փարատեցոյց զերկիւղալից տըրտմութիւնն։ Պահապանքըն պակուցեալ ահաբեկ լինէին. եւ կանանցն աւետարանեաց. մահու յաղթեաց և ծանուցաւ մահ։ Քարոզս առաքելով առ երջանիկ առաքեալսն. փութացարուք ի Գալիլեա. եւ տեսանիցէք զկենագործողն ըզՔրիստոս։

Յանճառ փառաց խոնարհեցար և ըզգեցար ըզհողեղէն բնութիւնս. վերառեր զանկեալն ի գլորմանէ յանմահական ի կեանս. ‖ Ըզքեզ օրհնեմք անապական ը Բանդ Աստուած։ Անպարտական նըդ մահու դատապարտեալ ի վերայ խաչին. որ փոխանակ զանուութեան պըտղոյն արբուցեր մեզ ի տիգախոց կողէդ. Ըզքեզ։ Առաքեցար ի դըժոխս ցուցանելով ըզզօրութիւն աստուածութեանդ. ջախջախեցեր ըզգլուխ խարդախողին խափանեցեր ըզզօրութիւն մահու. Ըզքեզ։

ՍԱՂ. ՁԴ. ԿՑ. Ցոյց մեզ։ փխ. Հաճեցար։ 567։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու։ ԺԳ. 22։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ շրջէր ընդ քաղաքս և ընդ գեօղս, ուսուցանէր. և ճանապարհ արարեալ յԵրուսաղէմ, ասէ ոմն ցնա.

Digitized by Google

Տէր, եթէ սակա՞ւք իցեն՝ որ ապրելոց իցեն։ Եւ նա ասէ ցնոսա. ջանացարուք մտանել ընդ դուռն նեղ. ասեմ ձեզ, զի բազումք խնդրեսցեն մտանել՝ և ոչ կարասցեն, յորմէ հետէ մտցէ տանուտէրն, և փակեսցէ զդուռնն. և սկսանիցիք կալ արտաքոյ՝ և բախել զդուռնն, և ասել. Տէր՝ Տէր, բաց մեզ. և պատասխանի տուեալ ասիցէ ձեզ. ոչ գիտեմ զձեզ ուստի էք։ Յայնժամ սկսանիջիք ասել. կերաք առաջի քո և արբաք, և ի հրապարակս մեր ուսուցեր։ Եւ ասիցէ. ասեմ ձեզ, ոչ գիտեմ զձեզ ուստի էք. ի բաց կացէք յինէն ամենայն մշակքդ անիրաւութեան։ Անդ եղիցի լալ և կրճել ատամանց, յորժամ տեսանիցէք զԱբրահամ և զԻսահակ և զՅակոբ և զամենայն մարգարէս յարքայութեան Աստուծոյ, և զձեզ հանեալ արտաքս։ Եւ եկեսցեն յարևելից և յարևմտից և ի հիւսիսոյ և ի հարաւոյ, և բազմեսցին յարքայութեան Աստուծոյ։ Եւ ահա իցեն յետինք՝ որ եղիցին առաջինք, և իցեն առաջինք՝ որ լինիցին յետինք։ Ի նմին աւուր մատեան ոմանք փարիսեցիք և ասեն ցնա. ել և գնա աստի, զի Հերովդէս կամի սպանանել զքեզ։ Եւ ասէ ցնոսա. երթայք ասացէք աղուեսուն այնմիկ. ահաւասիկ հանեմ դևս, և բժշկութիւնս կատարեմ այսօր և վաղիւ, և յերիր աւուր կատարիմ։ Բայց պարտ է այսօր և վաղիւ և ի միւսում աւուր գնալ. զի ոչ է մարթ մարգարէի կորնչել արտաքոյ քան զԵրուսաղէմ։ Երուսաղէմ՝ Երուսաղէմ, որ կոտորէիր զմարգարէս, և քարկոծ առնէիր զառաքեալսն առ քեզ. քանիցս անգամ կամեցայ ժողովել զորդիս քո՛ որպէս հաւ զձագս իւր ընդ թևովք, և ոչ կամեցարուք. ահա թողեալ լիցի ձեզ տունդ ձեր։ Բայց ասեմ ձեզ, եթէ ոչ ևս տեսանիցէք զիս, մինչև ասիցէք՝ օրհնեալ եկեալն յանուն Տեառն։ 35։

Քարոզ. խնդրեսցուք։ Կեցո։ Աղօթք. Քում ամենազօր։

---

## Յ Ե Ր Ե Կ Ո Յ Ի Ն

ՍԱՂ. ճԽԹ. Օրհնեցէք զՏէր յօրհնութիւն նոր։ 569։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի։ ԺԵ. 21։

Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի

Եւ ելեալ անտի (Յիսուսի) գնաց ի կողմանս Տիւրոսի և Սիդոնի։ Եւ ահա կին մի քանանացի ի սահմանաց

անտի հոցա ելեալ, աղաղակէր և ասէր. ողորմեաց ինձ Տէր որդի Դաւթի, դուստր իմ չարաչար այսահարի: Եւ նա ոչ ետ նմա պատասխանի: Եւ մատուցեալ աշակերտքն նորա՝ աղաչէին զնա և ասէին. արձակեա զնա՝ զի աղաղակէ զհետ մեր: Նա պատասխանի ետ և ասէ. ոչ ուրեք առաքեցայ՝ եթէ ոչ առ ոչխարս կորուսեալս տանն Իսրայէլի: Եւ նա մատուցեալ երկիր պագանէր նմա և ասէր. Տէր, օգնեա ինձ: Պատասխանի ետ նմա և ասէ. ոչ է բարւոք առնուլ զհաց մանկանց՝ և արկանել շանց: Եւ նա ասէ. այո Տէր, քանզի և շունք կերակրին ի փշրանաց անկելոց ի սեղանոյ տեառն իւրեանց: Յայնժամ պատասխանի ետ նմա Յիսուս, և ասէ. ո՜վ կին դու, մեծ են հաւատք քո, եղիցի քեզ որպէս և կամիս: Եւ բժշկեցաւ դուստր նորա ի նմին ժամու: 28 :

ՀԱՄԲԱՐՁԻ ԱԿ

Երգեսցուք քեզ ընդ հրեշտակս: Ի. Զ. փյ տառն: 30:

ՍԱՂ. ՃԾ. Օրհնեցէք զԱստուած ի սրբութեան: 571:

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մարկոսի: Ը. 1:

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Յաւուրսն յայնոսիկ դարձեալ ժողովուրդ բազում էր, և ինչ ոչ ունէին ուտել. կոչեաց զաշակերտսն իւր և ասէ ցնոսա. գթամ ես ի վերայ ժողովրդեանդ. զի արդ երեք աւուրք են՝ մինչ առ իս են, և ոչ ունին զինչ ուտիցեն. և եթէ արձակեմ զդոսա նօթիս ի տունս իւրեանց, նքթիցեն ի ճանապարհի. զի ոմանք ի դոցանէ ի հեռաստանէ եկեալ են: Պատասխանի ետուն նմա աշակերտքն նորա. ուստի՞ կարես յագեցուցանել զդոսա հացիւ յանապատի աստ: Եւ հարցանէր զնոսա. քանի՞ նկանակ հաց ունիք: Եւ նոքա ասեն. եօթն: Եւ հրամայեաց ժողովրդեանն բազմել ի վերայ երկրի. և առեալ զեօթն նկանակն՝ գոհացաւ՝ եբեկ, և տայր ցաշակերտսն զի արկցեն, և արկին առաջի ժողովրդեանն. և ձկունս սակաւ ունէին, և զայն ևս օրհնեաց, և հրամայեաց արկանել: Կերան և յագեցան, և բարձին զնշխարս կոտորոցն եօթն զամբիղ: Եւ էին որք կերանն՝ իբրև չորք հազարք, և արձակեաց զնոսա: 9:

Քարոզ. Խնդրեսցուք: Կեցո: Աղօթ+. Թագաւոր:

# Ե · ՇԱԲԱԹ · ԲՋ

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԴՁ

Որ եկիր կամաւ Հօր ի խաչ ելանել. վասն ազգի մարդկան || Թագաւոր փառաց Քրիստոս ամենեքեան օրհնեսցուք։ Որ մահու խաչի համբերեցեր վասն մեր. անմեկնելիդ ի Հօրէ. Թագաւոր։ Որ երեքօրեայ թաղմամբ պահեցար կենդանի. յարութիւն մեր և կեանք Թագաւոր։

Գ. Ըզ Տէր || օրհնեցէք և բարձր արարէք ըզնա յաւիտեանս։ Որ ի վերայ խաչին եհեղ զարիւն իւր Քրիստոս. և փրկեաց զարարածս ի մեղաց օրհ։ Որ ըզմահ կոխեաց զդժոխս աւերեաց. յարուցեալ ի մեռելոց ազատեաց ըզմեզ. օրհ։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԴՁ

Զքեզ օրհնութեամբ մեծացուցանեմք։ 260։

ՈՂՈՐՄԵԱ ԴՁ

Թիւնս իմ Որդի ծնեալ Փրկիչ։ Որ կամաւ Հօր ըզչարչարանըս յանձն առեր Բանդ Աստուած. ողորմ։ Որ համաւասար սուրբ Հոգւոյն. ըզգերեալսըն փրկեցեր քո յարութեամբդ. ողորմ։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԴՁ

Փառաբանակից Հօր Որդի. որ վասըն մեր խաչեցար զդժոխս աւերեալ յարեար յաւուր երրորդի. || փառք յարութեան քո Տէր։ Հրեշտակապետին իջմամբ. որ ըզպահապանսն երկիւղիւ զարհուրեցոյց առ դրանըն գերեզմանին. փառք։ Եւ ըսքանչելի սուրբ կանանցն. աւետարանեալ ասելով յարեաւ Քրիստոս յարուցիչըն մեռելոց. փառք։

ՍԱՂ. ՁԴ. Կ8. Ցոյց մեզ։ Փխ. Հանեցար։ 567։

Digitized by Google

## Սրբոյ Աւետարանին որ ըստ Ղուկասու։ ԺԴ. 1.

## Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի

Եւ եղև ի մտանելն (Նորա) ի տուն ուրումն իշխանացն փարիսեցւոց ի շաբաթու՝ ուտել հաց, և նոքա սպասէին Նմա։ Եւ ահա այր ոմն էր անդ ջրգողեալ առաջի Նորա։ Պատասխանի ետ Յիսուս և ասէ ցօրինականսն և ցփարիսեցիս. եթէ արժա՞ն իցէ ի շաբաթու բժշկել։ Եւ նոքա լուռ եղեն. և բուռն հարեալ զնմանէ՝ բժշկեաց զնա և արձակեաց։ Եւ ասէ ցնոսա. ո՞յր ուրուք ի ձէնջ էշ կամ եզն անկանիցի ի ջրհոր, և ոչ վաղվաղակի հանիցէ զնա յաւուր շաբաթու։ Եւ ոչ կարացին տալ Նմա պատասխանի առ այն։ Ասաց և առ կոչնականսն առակ մի. հայեցեալ թէ զիա՛րդ բարձրնտիր լինէին. ասէ ցնոսա. յորժամ կոչիցէ ոք զքեզ ի հարսանիս կամ ի կոչունս, մի՛ բազմիցիս յառաջին բարձին. գուցէ պատուականագոյն ևս քան զքեզ իցէ կոչեցեալ ի Նմանէ. և եկեալ՝ որ ըզքեզն և զնա կոչեաց, ասիցէ ցքեզ՝ տուր սմա տեղի, և ապա սկսանիցիս ամօթով զյետին տեղին ունել։ Այլ յորժամ կոչիցիս, երթիջիր բազմիջիր ի յետին տեղւոջ. զի յորժամ գայցէ որ կոչեացն զքեզ, ասիցէ ցքեզ. բարեկամ ի վեր մատիր. յայնժամ եղիցին քեզ փառք առաջի բազմակցացն քոց։ Զի ամենայն որ բարձրացուցանէ զանձն՝ խոնարհեսցի, և որ խոնարհեցուցանէ զանձն՝ բարձրասցի։ Ասէ և ցկոչնատէրն. յորժամ առնիցես ճաշ կամ ընթրիս, մի՛ կոչեր զբարեկամս քո, և մի՛ զեղբարս քո, և մի՛ զազգականս քո, և մի՛ զդրացիս քո, և մի՛ զմեծամեծս. զի մի՛ և նոքա փոխարէն կոչեսցեն զքեզ, և լինիցի քեզ հատուցումն։ Այլ յորժամ առնիցես ընդունելութիւն, կոչեա զաղքատս և զխեղս. զկաղս և զկոյրս, և երանելի լինիցիս. զի ոչ ունին փոխարէն հատուցանելոյ քեզ, և հատուսցի քեզ փոխարէն ի յարութեան արդարոց։ Իբրև լուաւ զայս ոմն ի բազմականացն՝ ասէ ցնա. երանի որ կերիցէ ճաշ յարքայութեան Աստուծոյ։ Եւ Նա ասէ. այր ոմն գործեաց ընթրիս, և հրաւիրեաց զբազումս։ Եւ առաքեաց զծառայ իւր ի ժամու ընթրեացն կոչել զհրաւիրեալսն, թէ եկայք, զի ահաւասիկ պատրաստ է ամենայն ինչ։ Եւ սկսան մի ըստ միոջէ ամենեքեան հրաժարել։ Առա-

Digitized by Google

ջինն ասէ․ ագարակ գնեցի, և հարկ է ելանել տեսանել զնա, աղաչեմ զքեզ՝ կալ զիս հրաժարեալ ։ Եւ միւսն ասէ․ լուծս հինգ եզանց գնեցի, և երթամ փորձել զնոսա, աղաչեմ զքեզ՝ կալ զիս հրաժարեալ ։ Եւ միւսն ասէ․ կին առի, և վասն այնորիկ ոչ կարեմ գալ ։ Եւ եկեալ ծառայն պատմեաց զայն տեառն իւրում ։ Յայնժամ բարկացեալ տանուտէրն՝ ասէ ցծառայն իւր․ ել վաղվաղակի ի հրապարակս և ի փողոցս քաղաքիդ, և զաղքատս և զխեղս և զկաղս և զկոյրս մոյծ այսր ։ Եւ ասէ ծառայն․ տէր, եղև զոր հրամայեցերն, և կայ ևս տեղի ։ Եւ ասէ տէրն ցծառայն․ ել ի ճանապարհս և ի ցանգս, և արա այսր մտանել, զի լցցի տունս իմ ։ Ասեմ ձեզ, զի ոչ ոք յայնց կոչեցելոց ճաշակեսցէ յընթրեաց իմոց ։ 24 ։

Քարոզ․ Խնդրեսցուք ։ Կեցո ։ Աղօթ․ Քում ամենազօր ։

---

## Յ Ե Ր Ե Կ Ո Յ Ի Ն

ՍԱՂ․ ԿԶ․ Աստուած ողորմեա մեզ և օրհնեա ։ 563 ։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի ։ ԺԵ․ 29 ։

Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի

Եւ գնացեալ անտի (Յիսուսի), եկն ի ծովեզրն Գալիլեացւոց, և ելեալ ի լեառն նստէր անդ ։ Մատեան առ նա ժողովուրդք բազումք՝ որ ունէին ընդ իւրեանս կաղս, կոյրս, համերս, միակողմանիս, և այլս բազումս․ և ընկեցին զնոսա առ ոտս նորա՝ և բժշկեաց զնոսա ։ Մինչև զարմանալ ժողովրդոցն՝ որ տեսանէին, զի համերքն խօսէին, կաղք գնային, միակողմանիք բժշկէին, կոյրք տեսանէին, և փառաւոր առնէին զԱստուած Իսրայելի ։ Եւ կոչեցեալ առ ինքն Յիսուսի զաշակերտսն՝ ասէ․ գթամ ի ժողովուրդդ, զի արդ երեք աւուրք են՝ զի կան առ իս, և ոչ ունին զինչ ուտիցեն․ և արձակել զդոսա նօթիս չկամիմ, գուցէ նքթիցեն զճանապարհայն ։ Ասեն ցնա աշակերտքն․ իսկ արդ մեզ յանապատի աստ ուստի՞ իցէ այնչափ հաց՝ մինչ յագեցուցանել զայսչափ ժողովուրդ ։ Եւ ասէ ցնոսա Յիսուս․ քանի՞ նկանակ ունիք ։ Եւ նոքա ասեն․ եօթն, և սակաւ ձկունս ։ Եւ հրամայեաց ժողովրդեանն բազմել ի վերայ գետնոյ․ և առեալ զեօթն նկանակն և զձկունսն՝ գոհացաւ և եբեկ, և ետ ցաշակերտսն, և նոքա ժողովրդեանն ։ Կերան ամենեքեան և

Digitized by Google

յագեցան. և բարձին զնշխարս կոտորոցն՝ եօթն զամբիղ լի։ Եւ որք կերանն՝ էին իբրև արք չորք հազարք, թող զկանայս և զմանկտի։ Իբրև արձակեաց զժողովուրդսն՝ ել ի նաւ և եկն ի սահմանս Մագդաղեայ։ Եւ մատուցեալ փարիսեցիքն և սադուկեցիք փորձելով խնդրէին ի նմանէ՝ նշան յերկնից ցուցանել նոցա։ Նա պատասխանի ետ և ասէ ցնոսա. (յորժամ երեկոյ լինի՝ ասէք, պարզ լինիցի՝ զի կարմրացեալ է երկին։ Եւ առաւօտու՝ այսօր մրրիկ, զի չառագունի տրտմութեամբ երկին։ Արդ՝ զերեսս երկնի կարէք քննել, իսկ զնշան ժամանակիս ո՛չ կարէք գիտել։) Ազգ չար և շնացող՝ նշան խնդրէ, և նշան մի՛ տացի նմա, բայց նշանն Յովնանու մարգարէի։ Եւ եթող զնոսա և գնաց։ Գնացին և աշակերտքն յայնկոյս, և մոռացան առնուլ հաց։ Ասէ ցնոսա Յիսուս. տեսէք և զգոյշ լերուք ի խմորոյ սադուկեցւոցն և փարիսեցւոց։ Նոքա խորհէին ընդ միմեանս և ասէին՝ թէ հաց ոչ բարձաք։ Գիտաց Յիսուս և ասէ. զի՞ խորհիք ի միտս ձեր թերահաւատք, եթէ հաց ոչ ունիք. տակաւին չիմանի՞ք և ո՞չ յիշէք զհինգ նկանակն ի հինգ հազարսն, և քանի սակառի բարձէք. և ոչ զեօթն նկանակն ի չորս հազարսն, և քանի զամբիղս բարձէք. արդ զիա՞րդ ոչ իմանայք՝ եթէ ոչ վասն հացի ասացի ձեզ զգոյշ լինել ի խմորոյ սադուկեցւոց և փարիսեցւոցն։ Յայնժամ ի միտ առին, եթէ ոչ ասաց զգուշանալ ի խմորոյ, այլ յաղանդոյ փարիսեցւոցն և սադուկեցւոց։ ԺԶ. 12։

ՄԵՍԵԴԻ Գալստեան

Օրհնեալ որ գաս յանուն Տեառն. օրհնեալ որ գալոց ես։

Տէր Աստուած մեր երևեցաւ մեզ. տարարէք տօնս ուրախութեան կանխաւ մինչև յանկիւնս սեղանոյ։

ՀԱՄԲԱՐՁԻ ԱՁ

Որ վերօրհնիս յաթոռս քերովբէից։ Մեծ տուն. 310։

ՍԱՂ. Ձ. Ցնծացէք առ Աստուած օգնական է։ 457։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մարկոսի։ Ը. 10։

Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի

Եւ նոյն ժամայն մտեալ ի նաւ հանդերձ աշակերտօքն՝ եկն ի կողմանս Դաղմանունեայ։ Եկին փարիսեցիքն՝

և սկսան վիճել ընդ նմա, և խնդրէին ի նմանէ նշան
յերկնից՝ փորձելով զնա։ Եւ զայրացաւ յոգի իւր և ա-
սէ. զի՞ է՝ զի ազգս այս նշան խնդրէ. ամէն ասեմ ձեզ,
թէ տացի նշան ազգիս այսմիկ։ Եթող զնոսա, դարձեալ
եմուտ ի նաւ, և գնաց յայնկոյս։ Եւ մոռացան հաց բառ-
նալ, բայց միայն մի նկանակ ունէին ընդ իւրեանս ի
նաւին։ Եւ պատուիրէր նոցա և ասէր. զգոյշ եղերուք
ի խմորոյ անտի փարիսեցւոց և ի խմորոյ հերովդիանոսաց։
Եւ խորհէին ընդ միմեանս և ասէին, թէ զի հացս ոչ
ունիմք։ Գիտաց Յիսուս՝ և ասէ ցնոսա. զի՞ խորհիք ի
սիրտս ձեր թերահաւատք, թէ հաց ոչ ունիք. տակաւին
ո՞չ իմանայք և ո՞չ յիշէք. ապշութիւն ունի զսիրտս ձեր.
աչք գոն՝ և ոչ տեսանէք, ականջք են՝ և ոչ լսէք և ոչ
իմանայք տակաւին. և ոչ յիշէք, յորժամ զհինգ նկանակն
ի հինգ հազարսն, և քանի՞ սակառի լի բարձէք զկոտորոցն։
Եւ ասեն. երկոտասան։ Եւ յորժամ զեօթն նկանակն ի
չորս հազարսն, և քանի՞ զամբիղ լի՝ բարձէք զկոտորոյն։
Եւ նոքա ասեն. եօթն։ Եւ ասէ ցնոսա. իսկ զիա՞րդ ոչ իմա-
նայք։ Գան ի Բեթսայիդա. և ածեն առաջի նորա կոյր մի,
և աղաչէին զնա՝ զի մերձեսցի ի նա։ Եւ առեալ զձեռանէ
կուրին՝ եհան արտաքոյ շինին, եթուք յաչս նորա, և ձեռն
եդ ի վերայ նորա. և հարցանէր ցնա՝ թէ տեսանիցէ՞
ինչ։ Բացաւ՝ և ասէր. տեսանեմ զմարդիկս զի շրջին
իբրև զծառս։ Դարձեալ եդ ձեռս ի վերայ աչաց նո-
րա՝ երաց, և տեսանէր. ողջացաւ և տեսանէր համար-
ձակ զամենայն։ Արձակեաց զնա ի տուն իւր՝ և ասէ.
ի շէնդ մի՛ մտանիցես, այլ երթ ի տուն քո. և յորժամ
ի շէնն մտանիցես՝ մի՛ ումեք ասիցես ի շինին։ 26։

Քարոզ. Խնդրեսցուք։ Կեցո։ Աղօթք. Թագաւոր։

---

## Զ· ԿԻՒՐԱԿԷ· ԲԿ

### ՅԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԴԶ

Ո՛ր բա՛րեբանեա՛լդ ես ի դա՛սուց քերո՛վբէից անմա՛հ
Թագաւո՛ր. ‖ Օ՛րհնեա. Լ ես եւ գովեա՛լ յաւիտեան։ Ո՛ր
խո՛նարհեցա՛ր յե՛րկնից և ա՛ռե՛ր մարմին զնմանաստեղծին
Ա՛դամայ. օ՛րհնեա. Լ։ Ո՛ր նստիս ի վե՛րա՛յ չորե՛քկեր-
պեա՛ն կենդա՛նեա՛ց Քրիստո՛ս Աստուա՛ծ. օ՛րհնեա. Լ։

Digitized by Google

Գ. Գործըք Տեառն ըզՏէր ‖ օրհնեցէք բարձր արարէք յաւիտեան։ Գիշերք ըզՏէր օրհնեցէք. Ընդունեալն ի յաթոռ փառաց. ըզգրաստ բերաննեալն ի հրեշտակաց ընդ անդադար օրհն։ Իսրայէլ ըզՏէր օրհնեցէք. Որ յահէ փառաց աստուածութեանն. դո-ղասմն զըւարթունք երկնից. ընդ անդադար օրհն։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԴԶ

Անարատ կոյս Աստուածածին Մարիամ սրբուհի։ 261.

ՈՂՈՐՄԵԱ ԴԶ

Ի խաչ ելեր Բանդ Աստուած մարմնացեալդ ի կուսէն կամաւ Հօր և Հոգւոյն ի փրկութիւն ազգի մարդկան։ Ի գերեզմանի եղար անապական. զի զմեռելութիւնս մեր բարձեր ըզգերեալսն փրկեցեր ի ձեռաց մահու։ Եւ յերրորդ աւուր յարեար աստուածապէս ի յերկինս համբարձար ընդ աջմէ Հօր նըստար. փառաւորեալդ ի հրեշտակաց և երկրպագեալդ ի սերովբէից։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԴԶ

Կանանցն կանխելով ի թաղումն կենդանւոյն տեսին ըզվէմն ի դրանցն ի բաց մերժեալ։ Թափուր ըզգերեզմանն. և ունայն տեսանէին. և տըրտմութեամբ լային յուսահատեալք։ Մայր խաչեցելոյն. զի լաս յուսահատեալ. քանզի Քրիստոս փառօք մեծաւ յարեաւ։

ՍԱՂ. ՁԴ. Կ8. Ցոյց մեզ։ Փխ. Հաճեցար։ 567։

Սրբոյ Աւետարանին որ ըստ Ղուկասու։ ԺԴ. 25։

Տերամբ մերով Յիսուսիւ Քրիստոսիւ

Եւ երթային (ընդ Նմա) ժողովուրդք բազումք, դարձաւ և ասէ ցնոսա. եթէ ոք գայ առ իս, և ոչ ատեայ զհայր իւր և զմայր, և զկին և զորդիս, և զեղբարս և զքորս, նա՛ և զանձն ևս իւր, ոչ կարէ իմ աշակերտ լինել։ Զի

որ ոչ բառնայ զխաչ իւր և գայ զկնի իմ, ոչ կարէ իմ աշակերտ լինել։ Ո՞վ ոք ի ձէնջ կամիցի շինել աշտարակ, և ոչ նախ նստեալ համարիցի զծախսն՝ եթէ ունիցի՞ բաւական ի կատարումն։ Զի գուցէ իբրև արկանիցէ հիմն՝ և ոչ կարիցէ կատարել, ամենեքին որ տեսանիցեն՝ ըսկըսանիցին ծաղր առնել զնա և ասել, թէ այս այր սկսաւ շինել՝ և ոչ կարաց կատարել։ Կամ ո՞ր թագաւոր երթեալ տայցէ պատերազմ ընդ այլում թագաւորի, և ոչ նստեալ նախ խորհիցի, եթէ կարօ՞ղ իցէ տասն հազարաւ զդէմ ունել զայնորիկ՝ որ գայցէ ի վերայ նորա քսան հազարաւ․ ապա թէ ոչ, մինչդեռ հեռագոյն իցէ, հրեշտակութիւն առաքեալ՝ աղաչեսցէ ի խաղաղութիւն։ Արդ այսպէս ամենայն ոք ի ձէնջ, որ ոչ հրաժարեսցէ յամենայն ընչից իւրոց, ոչ կարէ իմ աշակերտ լինել։ Բարւոք է աղ․ ապա թէ աղն անհամեսցի, ի՞ւ համեմեսցի․ ոչ յերկիր և ոչ յաղբ է պիտանացու, այլ ընկենուլ զնա արտաքս։ Որ ունիցի ականջս լսելոյ՝ լուիցէ։ Եւ էին մերձ առ նա ամենայն մաքսաւորք և մեղաւորք՝ լսել ի նմանէ։ Տրտնջէին փարիսեցիքն և դպիրք և ասէին․ ընդէ՞ր սա զմեղաւորս ընդունի և ուտէ ընդ նոսա։ Ասաց առ նոսա զառակս զայս․ ո՞վ ոք իցէ ի ձէնջ մարդ՝ որոյ իցէ հարիւր ոչխար, և կորուսանիցէ մի ի նոցանէ, ո՞չ թողուցու զիննսունն և զինն յանապատի, և երթիցէ զհետ կորուսելոյն՝ մինչև գտանիցէ զնա։ Եւ իբրև գտանէ՝ դնէ զնա ի վերայ ուսոց իւրոց խնդալով, և երթայ ի տուն․ կոչէ զբարեկամս և զդրացիս և ասէ ցնոսա․ ուրախ եղերուք ընդ իս, զի գտի զոչխարս իմ զկորուսեալ։ Ասեմ ձեզ, զի այսպէս է ուրախութիւն յերկինս վասն միոյ մեղաւորի որ ապաշխարիցէ, քան վասն իննսուն և ինն արդարոց՝ որոց չիցէ պիտոյ ապաշխարութիւն։ Կամ ո՞վ իցէ կին, որոյ իցեն դրամք տասն, և եթէ կորուսանիցէ դրամ մի, ո՞չ լուցանիցէ ճրագ, և ածիցէ աւել ի տան, և խնդրիցէ ստէպ՝ մինչև գտանիցէ․ և իբրև գտանէ, կոչէ զբարեկամս և զդրացիս և ասէ․ ուրախ լերուք ընդ իս, զի գտի զդրամն իմ զոր կորուսի։ Այնպէս, ասեմ ձեզ, ուրախութիւն եղիցի առաջի հրեշտակաց Աստուծոյ ի վերայ միոյ մեղաւորի որ ապաշխարիցէ։ Եւ ասէ․ առն միոջ էին երկու որդիք․ ասէ կրտսերն ի նոցանէ ցհայրն․ հայր, տուր ինձ բա֊

Digitized by Google

ժին որ անկանի յընչիցդ. և նա բաժանեաց նոցա զկեանսն:
Եւ յետ ոչ բազում աւուրց ժողովեալ զամենայն կրտսեր
որդւոյն՝ գնաց յաշխարհ հեռի, և անդ վատնեաց զինչս
իւր, զի կեայր անառակութեամբ: Եւ իբրև սպառեաց
զամենայն, եղև սով սաստիկ յաշխարհին յայնմիկ, և
սկսաւ ինքն չքաւորել: Եւ գնացեալ յարեցաւ ի մի ոմ
քաղաքացւոց աշխարհին այնորիկ. և յղեաց զնա յագա-
րակ իւր՝ արածել խոզս. և ցանկայր լնուլ զորովայն իւր
յեղջերէն զոր խոզքն ուտէին, և ոչ ոք տայր նմա: Եւ
եկեալ ի միտս իւր ասէ. քանի՛ վարձկանք իցեն ի տան
հօր իմոյ հացալիցք, և ես աստ սովամահ կորնչիմ. յա-
րուցեալ գնացից առ հայր իմ, և ասացից ցնա. հայր,
մեղայ յերկինս և առաջի քո, և ոչ ես եմ արժանի կոչել
որդի քո. արա զիս իբրև զմի ի վարձկանաց քոց: Եւ
յարուցեալ եկն առ հայր իւր. և մինչդեռ հեռագոյն էր,
ետես զնա հայրն և գթացաւ. յարեաւ և ընթացաւ ընդ
առաջ, անկաւ զպարանոցաւն նորա, և համբուրեաց զնա:
Եւ ասէ ցնա որդին. հայր, մեղայ յերկինս և առաջի
քո. ոչ ես եմ արժանի կոչել որդի քո: Ասէ հայրն ցծա-
ռայսն իւր. վաղվաղակի հանէք զպատմուճանն առաջին
և ագուցէք նմա, և տուք զմատանին ի ձեռն նորա և
կօշիկս յոտս նորա. և ածէք զեզն պարարակ, զենէք,
կերիցուք և ուրախ լիցուք. զի այս որդի իմ մեռեալ
էր՝ և եկեաց, կորուսեալ էր՝ և գտաւ. և սկսան ուրախ
լինել: Եւ էր երէց որդին նորա յագարակի. և մինչդեռ
գայր և մերձ եղև ի տունն, լուաւ զձայն երգոց և ըզ-
պարուց. և կոչեցեալ առ ինքն զմի ի ծառայիցն՝ հար-
ցանէր թէ զի՞նչ իցէ այն: Եւ նա ասէ ցնա. զի եղբայր
քո եկեալ է, և եզեն հայր քո զեզն պարարակ, զի ող-
ջամբ ընկալաւ զնա: Բարկացաւ՝ և ոչ կամէր մտանել.
և հայրն ելեալ արտաքս՝ աղաչէր զնա: Պատասխանի
ետ և ասէ ցհայրն. այս քանի՞ ամք են՝ զի ծառայեմ
քեզ, և երբեք զպատուիրանաւ քով ոչ անցի. ուլ մի
երբեք ոչ ետուր ինձ՝ զի ուրախ եղէց ընդ բարեկամս
իմ. յորժամ եկն որդիդ քո այդ, որ եկեր զկեանս քո
ընդ պոռնիկս, զեներ դմա զեզն պարարակ: Եւ ասէ
ցնա. որդեակ, դու հանապազ ընդ իս ես, և ամենայն
որ ինչ իմ է՝ քո է. այլ ուրախ լինել և խնդալ պարտ
էր, զի եղբայր քո այս մեռեալ էր՝ և եկեաց, կորու-
սեալ էր՝ և գտաւ: ԺԵ. 32:

Digitized by Google

Երգ. Նորաստեղծ ։ Քող. Խնդր ։ Կեցո ։ Աչ. Քում ամէ ։

---

## Յ Ե Ր Ե Կ Ո Յ Ի Ն

ՍԱՂ. ԾԽԹ. Օրհնեցէք զՏէր յօրհնութիւն ։ 569 ։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի ։ ԺԶ. 13 ։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ եկեալ (Յիսուս) ի կողմանս Փիլիպպեայ Կեսարեայն՝ հարցանէր ցաշակերտսն և ասէր. զո՞ ոք ասեն զինէն մարդիկն՝ թէ իցէ որդի մարդոյ ։ Եւ նոքա ասեն. ոմն զՅովհաննէս Մկրտիչ, և այլք զԵղիա, և կէսք զԵրեմիա, կամ զմի ոք ի մարգարէից ։ Ասէ ցնոսա Յիսուս. իսկ դուք զո՞ ոք ասէք զինէն թէ իցեմ ։ Պատասխանի ետ Սիմովն Պետրոս և ասէ. դու ես Քրիստոսն Որդի Աստուծոյ կենդանւոյ ։ Պատասխանի ետ Յիսուս և ասէ ցնա. երանի քեզ Սիմովն՝ որդի Յովնանու, զի մարմին և արիւն ոչ յայտնեաց քեզ, այլ Հայր իմ որ յերկինս է ։ Եւ ես քեզ ասեմ, զի դու ես վէմ, և ի վերայ այդր վիմի շինեցից զեկեղեցի իմ, և դրունք դժոխոց զնա մի՛ յաղթահարեսցեն ։ Եւ տաց քեզ զփականս արքայութեան երկնից. և զոր միանգամ կապեսցես յերկրի՝ եղիցի կապեալ յերկինս, և զոր արձակեսցես յերկրի՝ եղիցի արձակեալ յերկինս ։ Յայնժամ սաստեաց աշակերտացն, զի մի՛ ումեք ասասցեն՝ թէ նա է Քրիստոսն ։ Յայնմ հետէ սկսաւ Յիսուս ցուցանել աշակերտացն, թէ պարտ է նմա երթալ յԵրուսաղէմ, և թէ բազում չարչարանս չարչարել ի քահանայապետից և ի դպրաց և ի ծերոց ժողովրդեանն, և սպանանել, և յերիր աւուր յառնել ։ Եւ առեալ զնա մեկուսի Պետրոսի, սկսաւ կագել ընդ նմա և ասել. քաւ լիցի քեզ Տէր, մի՛ եղիցի քեզ այդ ։ Եւ նա դարձեալ ի Պետրոս ասէ. երթ յետս իմ սատանայ, գայթագղութիւն իմ ես. զի ոչ խորհիս դու զաստուծոյսն, այլ զմարդկան ։ Յայնժամ Յիսուս ասէ ցաշակերտսն իւր. եթէ ոք կամի զկնի իմ գալ՝ ուրասցի զանձն, և առցէ զխաչ իւր և եկեսցէ զկնի իմ ։ Զի որ կամիցի զանձն իւր կեցուցանել՝ կորուսցէ զնա, և որ կորուսցէ զանձն իւր վասն իմ՝ գտցէ զնա ։ Զի՞նչ օգտիցի մարդ՝ թէ զաշխարհս ամենայն շահեսցի, և զանձն իւր տուժեսցի. կամ զի՞նչ տացէ մարդ փրկանս ընդ անձին իւրում ։ Զի



Digitized by Google

գալոց է որդի մարդոյ փառօք Հօր իւրոյ՝ հանդերձ հրեշտակօք իւրովք, և յայնժամ հատուսցէ իւրաքանչիւր ըստ գործս իւր։ Ամէն ասեմ ձեզ, զի իցեն ոմանք ի սոցանէ որ աստ կան, որք ոչ ճաշակեսցեն զմահ՝ մինչև տեսցեն զորդի մարդոյ եկեալ արքայութեամբ իւրով։ Եւ յետ վեց աւուր առնու ընդ իւր Յիսուս զՊետրոս և զՅակովբոս և զՅովհաննէս զեղբայր նորա, և հանէ զնոսա ի լեառն մի բարձր առանձինն. և այլակերպեցաւ առաջի նոցա, և լուսաւորեցան երեսք նորա իբրև զարեգակն, և հանդերձք նորա եղեն սպիտակ իբրև զլոյս։ Եւ ահա երևեցան նոցա Մովսէս և Եղիա՝ որ խօսէին ընդ նմա։ Պատասխանի ետ Պետրոս և ասէ ցՅիսուս. Տէր, բարւոք է մեզ աստ լինել. եթէ կամիս՝ արասցուք երիս տաղաւարս. մի քեզ, և մի Մովսիսի, և մի Եղիայի։ Եւ մինչդեռ նա խօսէր, ահա ամպ լուսաւոր հովանի եղև ի վերայ նոցա. ձայն եղև յամպոյն և ասէ. դա է Որդի իմ սիրելի ընդ որ հաճեցայ, դմա լուարուք։ Իբրև լուան աշակերտքն, անկան ի վերայ երեսաց իւրեանց և երկեան յոյժ։ Եւ մատուցեալ Յիսուս բուռն եհար զնոցանէ և ասէ. յոտն կացէք և մի՛ երկնչիք։ Ամբարձին զաչս իւրեանց, և ոչ զոք տեսին՝ բայց միայն զՅիսուս։ Եւ մինչդեռ իջանէին ի լեռնէ անտի, պատուիրեաց նոցա Յիսուս և ասէ. մի՛ ումեք ասիցէք զտեսիլդ, մինչև որդի մարդոյ ի մեռելոց յարիցէ։ Հարցին զնա աշակերտքն և ասեն. զի՞արդ դպիրքն ասեն, եթէ Եղիայի նախ պարտ է գալ։ Պատասխանի ետ Յիսուս և ասէ ցնոսա. Եղիա գայ, և հաստատեսցէ զամենայն. այլ ասեմ ձեզ՝ զի Եղիա եկեալ իսկ է. և ոչ ծանեան զնա. այլ արարին ընդ նա զոր ինչ կամեցան. Նոյնպէս և որդի մարդոյ չարչարելոց է ի նոցանէ։ Յայնժամ ի միտ առին աշակերտքն, թէ վասն Յովհաննու Մկրտչի ասաց ցնոսա։ ԺԷ. 13։

ՀԱՄԲԱՐՁԻ ԲԿ

Կանխեցին կանայքն ընդ։ Դ. Ե. Զ. ձնն տօն։ 36։

ՍԱՂ. ՃԾ. Օրհնեցէք զԱստուած ի սրբութեան։ 571։

Սրբոյ Աւետարանին որ ըստ Մարկոսի։ Ը. 27։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ ել (Յիսուս) աշակերտօքն հանդերձ ի շէնս Կեսա-

Digitized by Google

րեայ Փիլիպպեայ, և ի ճանապարհին հարցանէր ցաշակերտսն և ասէր. զո՞ ուստեք ասեն զինէն մարդիկն՝ թէ իցեմ։ Նոքա ետուն պատասխանի և ասեն. զՅովհաննէս Մկրտիչ, և այլք զԵղիա, և այլք զմի ոք ի մարգարէից անտի։ Ասէ ցնոսա. իսկ դուք զո՞ ուստեք ասէք զինէն թէ իցեմ։ Պատասխանի ետ Պետրոս և ասէ ցնա. դու ես Քրիստոսն։ Եւ սաստեաց ի նոսա՝ զի մի՛ ումեք ասիցեն զնմանէ։ Եւ սկսաւ ուսուցանել զնոսա, թէ պարտ է որդւոյ մարդոյ բազում չարչարանս ընդունել, և անարգել յերիցանց և ի քահանայապետից և ի դպրաց, և մեռանել և յերիր աւուր յառնել. և համարձակ զբանն խօսեցաւ։ Եւ առեալ զնա մեկուսի Պետրոսի՝ սկսաւ սաստել նմա։ Եւ նա դարձաւ ետես զաշակերտսն, սաստեաց Պետրոսի և ասէ. երթ յետս իմ սատանայ, զի ոչ խորհիս դու զաստուծոյսն, այլ զմարդկանս։ Եւ կոչեցեալ առ ինքն զժողովուրդն աշակերտօքն հանդերձ՝ ասէ ցնոսա. եթէ ոք կամի գալ զկնի իմ, ուրասցի զանձն իւր, և բարձցէ զխաչ իւր և եկեսցէ զկնի իմ։ Զի որ կամիցի ապրեցուցանել զանձն իւր, կորուսցէ զնա. և որ կորուսցէ զանձն իւր վասն աւետարանին, ապրեցուսցէ զնա։ Զի՞նչ օգուտ է մարդոյ՝ եթէ զաշխարհս ամենայն շահեսցի, և զանձն իւր տուժեսցի. քանզի զի՞նչ տացէ մարդ փոխանակ անձին իւրոյ։ Զի որ ոք ամօթ համարեսցի զիս և զբանս իմ ի շնացօղ և ի մեղաւոր ազգիս այսմիկ, և որդի մարդոյ յամօթ արասցէ զնա՝ յորժամ եկեսցէ փառօք Հօր իւրոյ և հրեշտակաց սրբոց։ Եւ ասէ ցնոսա. ամէն ասեմ ձեզ, զի են ոմանք ի սոցանէ որ աստ կան, որք մի՛ ճաշակեսցեն զմահ՝ մինչև տեսցեն զարքայութիւն Աստուծոյ եկեալ զօրութեամբ։ Եւ յետ վեց աւուր առնու ընդ իւր Յիսուս զՊետրոս և զՅակովբոս և զՅովհաննէս, և հանէ զնոսա ի լեառն մի բարձր առանձինն. և յայլակերպս եղև առաջի նոցա. և ձորձք նորա եղեն փայլուն սպիտակ յոյժ, որպէս թափիչք երկրի ոչ կարեն այնպէս սպիտակացուցանել։ Եւ երևեցաւ նոցա Եղիա Մովսիսիւ հանդերձ, և խօսէին ընդ Յիսուսի։ Պատասխանի ետ Պետրոս և ասէ ցՅիսուս. ռաբբի, բարւոք է մեզ աստ լինել. և արասցուք երիս տաղաւարս՝ մի քեզ, և մի Մովսիսի, և մի Եղիայի։ Քանզի ոչ գիտէր զինչ խօսէր, զի զարհուրեալ էին։ Եւ

եղև ամպ մի հովանի ի վերայ նոցա, ձայն եղև յամպոյ անտի՝ և ասէ․ դա է որդի իմ սիրելի, դմա լուարուք։ Եւ յանկարծակի հայեցեալ այսր անդր, ոչ ևս զոք ու-րեք տեսին, բայց միայն զՅիսուս ընդ իւրեանս։ Եւ մինչդեռ իջանէին ի լեռնէ անտի, պատուիրեաց նոցա զի մի՛ ումեք պատմեսցեն զոր տեսինն, բայց յորժամ որդի մարդոյ ի մեռելոց յարիցէ։ Եւ նոքա զբանն ի մտի ունէին․ և խնդրէին ընդ միմեանս՝ թէ զի՛նչ իցէ ի մե-ռելոցն յառնել։ Հարցին զնա և ասեն․ զի՞նչ է այն զոր դպիրքն ասեն, եթէ նախ Եղիայի պարտ է գալ։ Նա պատասխանի ետ նոցա և ասէ․ Եղիա նախ եկեալ յար-դարեսցէ զամենայն։ Իսկ զիա՞րդ գրեալ է զորդւոյ մար-դոյ, զի բազում ինչ չարչարեսցի և անգոսնեսցի։ Այլ ես ասեմ ձեզ, եթէ Եղիա եկն, և արարին ընդ նա զինչ և կամեցան, որպէս և գրեալ է վասն նորա։ Թ․ 12։

Քարոզ․ Խնդրեսցուք։ Կեցո։ Աղօթ․ Թագաւոր։

---

# Զ․ ԵՐԿՈՒՇԱԲԱԹԻ․ ԳԶ

## ՑԱՌԱՒՕՏՈՒ

### ՀԱՐՑ ԴԶ

Որ ի քառանկերպեան նըշանաւ յաթոռ․ անլռելի ձայնիւ օրհնիս ի պայծառ դասուց․ հոգեւոր երգով ‖ Աստըւած հարցըն մերոց։ Որ ի վեցթեւեան սրովբէսըդ հանդիսի․ եւ խնամես զքո զարարածըս նըշանաւ խաչի քո զմեզ ապրեցուցեր Աստըւած։ Որ նըշանիւ ի յաթոռ փառաց․ առաւել բարձրեալ գովեալ նըշանաւ խաչի քո զմեզ ապրեցուցեր Աստըւած։

Գ․ Ըզ Տէր ‖ Ամենայն գործըք Տեառն ըզՏէր օրհնեցէք։ Այսօր փըրկական սուրբ խաչիւն զուարճացան արարածք ամ։ Այսօր մըռեալն ի գերեզմանն աւերեաց ըզդըժոխս ամ։ Այսօր ի յերկինս համբարձաւ ընդ աջմէ հօր նըստաւ ամ։

### ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԴԶ

Աստուածածին մայր լուսոյ սուրբ կոյս լուսեղէն

տաճար․ որում երկինք չէին բաւական․ առ ի բնա-կութիւն ի քէն մարմնացաւ։ Ընդ քեզ անհամրանացեալն որ միայնդ ի կանայս օրհնեալ․ կրելով ի քեզ զանտա-նելի զբնութիւնն․ օրհնութեամբ մեծացուցանեմք։ Որում լեր աթոռ փրկութեան յոյս հաստատութեան մարդկան․ միջնորդ օրինաց և շնորհաց․ օրհնութեամբ անդադար գոհութեամբ մեծացուցանեմք։

ՈՂՈՐՄԵԱ ԴԶ

Թիւնս իմ Ողորմեա մեզ Աստուած։ Որ ի յեր-կնից ի Հօրէ իջեր անընդկլիզբն Որդի․ Նոյն ինքն ըզ-դըժոխս աւերեցեր․ ող․ Որ ըզճառագայթս աստուա-ծութեանդ երեւեցուցեր փրկիչ․ ըզպաշտօնեայսն զար-հուրեցուցեր․ ող․ Որ ձեռօքըն Թովմայի շօշափեցար փրկիչ․ առ աշակերտսըն մտեր դրամբըն փակելովք․ ողորմեա։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԴԶ

Այսօր ձայնիւդ քո Քրիստոս․ ի վերայ խաչին դողացուցեր զարարածս ամենայն․ զերկնային և զեր-կրաւոր բնութիւնս։ Այսօր երեւումըն հրեշտա-կին․ զարհուրեցոյց ըզկանայսն ասելով․ զի խնդրէք ըզկենդանին ընդ մեռեալս։ Եւ յահէ զօրութեան Աստուածորդւոյն զարհուրեցան կարապետըք դըժոխոցն ասելով․ համբարձէք իշխանք ըզդրունըս ձեր ի վեր։

ՍԱՂ․ ՁԴ․ կ8․ Ցոյց մեզ։ փխ․ Հաճեցար։ 567։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու։ ԺԶ․ 1։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ ասէ առ աշակերտսն․ այր մի էր մեծատուն, ո-րոյ էր տնտես․ և եղև զնմանէ ամբաստանութիւն, որ-պէս թէ վատնիցէ զինչս նորա։ Կոչեաց և ասէ ցնա․ զինչ է այս զոր լսեմս զքէն․ տուր զհամար տնտեսու-թեան քո, զի ոչ ևս կարես լինել տնտես։ Ասէ ընդ միտս

իւր տնտեսն. զի՞նչ գործեցից, զի Տէր իմ հանէ զտըն-
տեսութիւնս. գործել ոչ կարեմ, մուրանալ ամաչեմ.
գիտեմ զինչ արարից, զի յորժամ ի բաց լինիցիմ ի տըն-
տեսութենէս, ընկալցին զիս ի տունս իւրեանց: Եւ կո-
չեցեալ առ ինքն մի ըստ միոջէ ի պարտապանաց Տեառն
իւրոյ, ասէ ցառաջինն. քանի՞ ինչ պարտիս Տեառն իմում:
Եւ նա ասէ. հարիւր մար ձիթոյ. ասէ ցնա. կա՛ զգիր
քո՝ և նիստ գրեա վաղվաղակի յիսուն: Դարձեալ ասէ
ցմիւսն. դու քանի՞ ինչ պարտիս. և նա ասէ. հարիւր
քոռ ցորենոյ. և ասէ ցնա. կա՛ զգիր քո՝ և նիստ գրեա
ութսուն: Եւ գովեաց տէրն զտնտեսն անիրաւութեան,
զի իմաստութեամբ արար. զի որդիք աշխարհիս այսո-
րիկ իմաստնագոյնք են քան զորդիս լուսոյ յազգս իւրեանց:
Եւ ես ձեզ ասեմ, արարէք ձեզ բարեկամս ի մամոնայէ
անիրաւութեան. զի յորժամ պակասիցէ այն, ընկալցին
զձեզ ի յարկսն յաւիտենականս: Որ ի փոքուն հաւատա-
րիմ է, և ի բազմին հաւատարիմ է. և որ ի փոքուն ա-
նիրաւ է, և ի բազմին անիրաւ է: Իսկ արդ եթէ յա-
նիրաւ մամոնային չեղէք հաւատարիմք, զճշմարիտն ձեզ
ո՞ հաւատասցէ: Եւ եթէ յօտարին չեղէք հաւատարիմք,
զձերն ո՞ տացէ ձեզ: Ոչ ոք ծառայ կարէ երկուց տերանց
ծառայել. զի եթէ զմին ատիցէ, և զմիւսն սիրիցէ. կամ
զմին մեծարիցէ, և զմիւսն արհամարհիցէ. ոչ կարէք
Աստուծոյ ծառայել և մամոնայի: Իբրև լսէին զայս ա-
մենայն փարիսեցիքն, քանզի արծաթասէրք էին, անգոս-
նէին զնա: Եւ ասէ ցնոսա. դուք էք որ արդարացու-
ցանէք զանձինս առաջի մարդկան, սակայն Աստուած գի-
տէ զսիրտս ձեր. զի որ առաջի մարդկան բարձր է,
պիղծ է առաջի Աստուծոյ: Օրէնքն և մարգարէք մինչև
ցՅովհաննէս. յայնմ հետէ արքայութիւն Աստուծոյ աւե-
տարանի, և ամենայն ոք զնա բռնաբարէ: Դիւրին իցէ
երկնից և երկրի անցանել, քան յօրինացն միոյ նշանա-
խեցի անկանել: Ամենայն որ արձակէ զկին իւր և ա-
նէ այլ՝ շնայ, և որ զարձակեալն առնէ՝ շնայ: Այր մի
էր մեծատուն, և ագանէր բեհեզս և ծիրանիս, և ու-
րախ լինէր հանապազ առատապէս: Եւ աղքատ մի ա-
նուն Ղազարոս, անկեալ դնէր առ դրան նորա վիրաւո-
րեալ. և ցանկայր յագել ի փշրանացն՝ որ անկանէին ի
սեղանոյ մեծատանն. այլ և շունք ևս գային և լեզուին

Digitized by Google

զվէրս նորա։ Եւ եղեւ մեռանել աղքատին, եւ տանել հրեշտակաց զնա ի գոգն Աբրահամու. մեռաւ եւ մեծատունն եւ թաղեցաւ. եւ ի դժոխսն՝ ամբարձ զաչս իւր մինչ ի տանջանսն էր, ետես զԱբրահամ ի հեռաստանէ, եւ զՂազարոս ի գոգ նորա հանգուցեալ։ Եւ նա աղաղակեաց եւ ասէ. հայր Աբրահամ, ողորմեաց ինձ, եւ առաքեա զՂազարոս, զի թացցէ զծագ մատին իւրոյ ի ջուր, եւ զովացուսցէ զլեզու իմ, զի պապակիմ ի տապոյ աստի։ Եւ ասէ ցնա Աբրահամ. որդեակ, յիշեա զի ընկալար անդէն զբարիս քո ի կեանս քում, եւ Ղազարոս նոյնպէս զչարչարանս. արդ սա աստ մխիթարի, եւ դու այդր պապակիս. եւ ի վերայ այսր ամենայնի՝ վիհ մեծ է ընդ մեզ եւ ընդ ձեզ. եթէ կամիցին աստի առ ձեզ անցանել, ոչ կարեն, եւ ոչ այտի ոք առ մեզ անցանել։ Եւ ասէ. արդ աղաչեմ զքեզ հայր, զի արձակեսցես զդա ի տուն հօր իմոյ. են իմ անդ եղբարք հինգ, որպէս զի տայցէ նոցա վկայութիւն, զի մի՛ եւ նոքա գայցեն յայս տեղի տանջանաց։ Եւ ասէ Աբրահամ. ունին զՄովսէս եւ զմարգարէսն, նոցա լուիցեն։ Եւ նա ասէ. ոչ, հայր Աբրահամ, բայց եթէ ի մեռելոց ոք երթիցէ առ նոսա, եւ ապաշխարիցեն։ Եւ ասէ ցնա. եթէ Մովսիսի եւ մարգարէիցն ոչ լսեն, եւ ոչ թէ ի մեռելոց ոք յառնիցէ՝ հաւատասցեն։ 31։

Քարոզ. Խնդրեսցուք։ Կեցո։ Աղօթ. Քում ամենազօր։

---

## Ց Ե Ր Ե Կ Ո Ց Ի Ն

ՍԱՂ. ծխթ. Օրհնեցէք զՏէր յօրհնութիւն։ 569։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի։ ժէ. 14։

Առ Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ իբրեւ եկին ի ժողովուրդն, մատեաւ այր մի ի ծունր իջանէր եւ ասէր. Տէր ողորմեաց որդւոյ իմում, զի լուսնոտի եւ չարաչար հիւանդանայ. բազում անգամ անկանի ի հուր, եւ երբեք ի ջուր. եւ մատուցի զնա աշակերտացն քոց, եւ ոչ կարացին բժշկել։ Պատասխանի ետ Յիսուս եւ ասէ. ո՛վ ազգ անհաւատ եւ թիւր, մինչեւ ցե՞րբ իցեմ ընդ ձեզ, մինչեւ յե՞րբ անսայցեմ ձեզ. ած զնա առ իս։ Եւ սաստեաց ի նա Յիսուս, եւ ել ի նմանէ դեւն, եւ բժշկեցաւ մանուկն ի ժամէն յայնմանէ։ Յայնժամ մա-

Digitized by Google

տեան աշակերտքն առանձինն և ասեն ցՅիսուս. մեք ընդէ՞ր ոչ կարացաք հանել զնա։ Եւ նա ասէ ցնոսա. վասն թերահաւատութեան ձերոյ։ Ամէն ասեմ ձեզ, եթէ ունիցիք հաւատս քան զհատ մանանխոյ, ասասջիք լերինս այսմիկ՝ փոխեաց աստի անդր, և փոխեսցի. և ոչ ինչ անհնարին լինիցի ձեզ։ Բայց այս ազգ ոչ ելանէ, եթէ ոչ աղօթիւք և պահովք։ 20։

ՀԱՄԲԱՐՁԻ ԳՁ

Հրաշալի յարութիւնն։ Զ. Է. ա՟ր տ՟ն։ 39. 41։

ՍԱՂ. ԾԾ. Օրհնեցէք զԱստուած ի սրբութեան։ 571։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մարկոսի։ Թ. 13։

Տերամբ մերով Յիսուսիւ Քրիստոսիւ

Եւ եկեալ առ աշակերտսն՝ տեսին ամբոխ շուրջ զնոքօք և զդպիրսն՝ զի վիճէին ընդ նոսա։ Եւ վաղվաղակի ամենայն ժողովուրդն իբրև տեսին զնա՝ զարմացան, և ընդ առաջ ընթացեալ ողջոյն տային նմա։ Եւ եհարց ցնոսա թէ զի՞նչ վիճէիք ընդ նոսա։ Պատասխանի ետ մի ոմն ի ժողովրդենէն և ասէ. վարդապետ, ածի զորդի իմ առ քեզ, զոր ունի այս համր, և ուր հասանէ՝ զարկուցանէ զնա, և փրփրէ և կրճտէ զատամունս իւր և ցամաքի. և ասացի ցաշակերտսն քո զի հանցեն, և ոչ կարացին հանել զնա։ Պատասխանի ետ նոցա և ասէ. ո՜վ ազգ անհաւատ՝ մինչև յե՞րբ իցեմ ընդ ձեզ, մինչև ցե՞րբ անսայցեմ ձեզ. ածէք զնա առ իս։ Եւ ածին զնա առ նա. իբրև ետես զնա այսն, վաղվաղակի շարժլեաց զնա, և անկեալ յերկիր թաւալէր և փրփրեայր։ Եհարց ցհայր նորա և ասէ. քանի՞ ժամանակք են՝ յորմէ հետէ այդ եղև դմա։ Եւ նա ասէ. ի մանկութենէ. բազում անգամ ի հուր արկանէ զդա և ի ջուր՝ զի կորուսցէ. արդ եթէ կարող ինչ ես, օգնեա մեզ Տէր, գթացեալ ի վերայ մեր։ Եւ Յիսուս ասէ ցնա. ասացեր՝ եթէ կարող ես. ամենայն ինչ հնարաւոր է այնմ որ հաւատայն։ Եւ վաղվաղակի աղաղակեաց հայր մանկանն և ասէ. հաւատամ, օգնեա անհաւատութեանս իմում։ Իբրև ետես Յիսուս՝ եթէ կուտի ժողովուրդն ի վերայ, սաստեաց այսոյն պղծոյ և ասէ. համրդ և խուլ այս՝ ես տամ քեզ հրաման, ել ի դմանէ, և այլ եւս մի՛ մտանիցես ի դա։ Եւ աղաղակեաց և յոյժ ալկեաց զնա, և ել.

և եղև պատանեակն իբրև զմեռեալ, մինչև բազմաց խօսել՝ թէ մեռաւ։ Եւ Յիսուս կալաւ զձեռանէ նորա յարոյց զնա, և կանգնեցաւ։ Եւ իբրև եմուտ նա ի տուն, աշակերտքն առանձինն հարցին ցնա. մեք ընդէ՞ր ոչ կարացաք հանել զնա։ Եւ ասէ ցնոսա. այդ ազգ ոչ իւիք ելանէ, եթէ ոչ պահօք և աղօթիւք։ 28։

Քարոզ. Խնդրեսցուք։ Կեցո։ Աղօթք. Թագաւոր։

# Զ. ԵՐԵՔՇԱԲԱԹԻ. ԳԿ

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԴԶ

Ցորժամ ի խաչին բևեռեցար Քրիստոս Աստուած. և զԱդամ նորոգեցեր ի նախաստեղծ բնութեանն. ‖ օրհնեալ Տէր Աստուած հարցըն մերոց։ Որ ի սպասաւորէն ապտակեցար. և ի զինուորէն գեղարդեամբըն խոցեցար. օրհնեալ։ Թաղեցար ի մէջ երկրի. և յերրորդ աւուր յարեար ամենակարող փրկիչ. օրհնեալ։

Գ. Գործք Տեառն ըզՏէր օրհնեցէք և բարձր արարէք ըզնա յաւիտեանս։ Գիշերք ըզՏէր օրհնեցէք Որ էիր յէութեան ի բարձունս և ի Հօրէ առաքեցար ի յերկիր. փառքըն մեր մեղաւորացս յիշեա զմեզ Տէր։ Իսրայէլ ըզՏէր օրհնեսցէ Որ բանիւ քո բարձեալ ունիս զամենայն արարածս. և ի խաչին փառքըն մեր բևեռեցար յիշեա զմեզ Տէր։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԴԶ

Ուրախացիր Աստուածածին. որ կուսութեանց։ 262։

ՈՂՈՐՄԵԱ ԴԶ

Անեղակից Բանըդ Հօր և եղելոց պատճառ. որ ծը-նար ի կուսէն ‖ ըզքեզ ծանեաք Աստուած. աղաչեմք ողորմեա ազգի մարդկան։ Սերովբէից անհասոր և դատաւոր կենդանեաց և մեռելոց. որ ի խաչին բևեռե-ցար ըզքեզ։ Կենդանութեան աղբիւր և պարգևա-

Digitized by Google

տուաւ տաաա ողորմութեան որ յարեարդ ի մեռելոց ըղէզ ծանեաք Աստուած. աղաչեմք ողորմեա ազգի մարդկան։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԴՁ

Որ ի վերոյ ես քան ըզմիտս և զխորհուրդս. համագոյակցն եղելոց արարող. ի Հօրէ առաքեցար փառօքն մեր եւ մարմնացար ի սուրբ կուսէն։ Անքըննելին ի յէութեան Աստուած. անօրինեցար յարգանդի կուսին. մարդեցուցանել զնախաստեղծին ծընունդն. և վերստին նորոգել ի փառս։ Ոչ շատացար մարդ եղանել Աստուած. այլ եւ խաչի համբերեալ ըզթաղմըն յանձն առեր զերեքօրեայ. և յարուցեալ նորոգեցեր զաշխարհս։

ՍԱՂ. ՁԴ. ԿՑ. Ցոյց մեզ։ Փխ. Հաւանեցար։ 567։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու։ ԺԷ. 1։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Ասաց և առ աշակերտսն իւր. ոչ է մարթ չգալ գայթագղութեան, բայց վայ այնմիկ է՝ յոյր ձեռն գայցէ։ Լաւ էր նմա՝ թէ վէմ երկանաքար կախէր զպարանոցէ նորա, և անկանէր ի ծով, քան թէ գայթագղեցուցանէ զմի ոք ի փոքրկանցս յայսցանէ։ Զգոյշ կացէք անձանց. եթէ մեղիցէ եղբայր քո, սաստեա նմա. և եթէ ապաշխարիցէ, թող նմա. և եթէ եօթն անգամ մեղիցէ քեզ, և եօթն անգամ դարձցի ի քեզ և ասիցէ՝ ապաշխարեմ, թողցես նմա։ Եւ ասեն առաքեալքն ցՏէր. յաւել մեզ հաւատս. Եւ ասէ Տէր. եթէ ունիցիք հաւատս քան զհատ մանանխոյ, և ասիցէք թթենւոյս այդմիկ, խլեաց և տընկեաց ի ծովու, և հնազանդեսցի ձեզ. Իսկ ո՞վ ոք ի ձէնջ որ ունիցի ծառայ հողագործ կամ հովիւ, որ իբրև մտանիցէ յագարակէ՝ ասիցէ ցնա վաղվաղակի, թէ անց բազմեաց. այլ ո՞չ ասիցէ ցնա, թէ պատրաստեա զինչ ընթրելոց իցեմ, և գօտի ածեալ պաշտեա զիս՝ մինչև կերայց և արբից, և ապա կերիցես և արբցես դու։ Միթէ շնորհ ունիցի ծառային այնմիկ, զի արար զամենայն հրամանսն։ Նոյնպէս և դուք՝ յորժամ առնիցէք զամենայն հրամայեալսն ձեզ, ասասջիք՝ թէ ծառայք անպի-

Digitized by Google

տանք եմք, զոր պարտէաքն առնել՝ արարաք։ Եւ եղև մինչև երթայր նա յԵրուսաղէմ, և ինքն անցանէր ընդ մէջ Սամարեայ և Գալիլեացւոց։ Եւ մինչդեռ մտանէր ի գեօղ ուրեմն, պատահեցան նմա տասն այր բորոտ, որք կացին ի հեռաստանէ, բարձին զձայնս և ասեն. Յիսուս վարդապետ, ողորմեաց մեզ։ Եւ իբրև ետես զնոսա, ասէ ցնոսա. երթայք ցուցէք զանձինս քահանայիցն։ Եւ եղև իբրև գնացին, առժամայն սրբեցան։ Մի ոմն ի նոցանէ իբրև ետես՝ եթէ բժշկեցաւ, դարձաւ անդրէն՝ ի ձայն մեծ փառաւոր առնէր զԱստուած. անկաւ ի վերայ երեսաց իւրոց առ ոտս նորա՝ և գոհանայր զնմանէ, և ինքն էր Սամարացի։ Պատասխանի ետ Յիսուս և ասէ. ո՞չ տասն սոքա սրբեցան, իսկ արդ ինունքն ո՞ւր են։ Չի ոչ գտան դառնալ տալ փառս Աստուծոյ, բայց միայն այլազգիս այս։ Եւ ասէ ցնա. արի գնա, զի հաւատք քո կեցուցին զքեզ։ 19։

Քարոզ. Խնդրեսցուք։ Կեցո։ Աղօթ. Քում ամենազօր։

---

## ՅԵՐԵԿՈՅԻՆ

ՍԱՂ. ԾԽԹ. Օրհնեցէք զՏէր յօրհնութիւն նոր։ 569։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի։ ԺԷ. 21։

Տերամբ մերով Յիսուսիւ Քրիստոսիւ

Եւ մինչդեռ շրջէին նոքա ի Գալիլեա, ասէ ցնոսա Յիսուս. մատնելոց է որդի մարդոյ ի ձեռս մարդկան, և սպանցեն զնա, և յերիր աւուր յարիցէ։ Եւ տրտմեցան յոյժ։ Իբրև եկին նոքա ի Կափառնաում, մատեան որք զերկդրամեանն պահանջէին առ Պետրոս, և ասեն. վարդապետն ձեր ո՞չ տայ զերկդրամեանն։ Եւ ասէ. այո։ Եւ իբրև եմուտ ի տուն՝ յառաջեաց քան զնա Յիսուս և ասէ. զիա՞րդ թուի քեզ Սիմոն. թագաւորք ազգաց յումմէ՞ առնուն զհարկս կամ զհաս, յորդւո՞ց իւրեանց՝ թէ յօտարաց։ Եւ իբրև ասաց թէ յօտարաց, ասէ ցնա Յիսուս. ապա ուրեմն ազատ են որդիքն։ Բայց զի մի՛ գայթագղեցուսցուք զնոսա, երթ ի ծով՝ և ընկեա կարթ, և զառաջին ձուկնն որ ելանիցէ՝ առ, և բաց զբերան նորա, և գտանիցես սատեր. և զայն առեալ տացես նոցա ընդ իմ և ընդ քո։ Յայնմ աւուր մատեան աշակերտքն առ Յիսուս և ասեն. ո՞վ իցէ ի մէնջ մեծ յարքայութեան

Digitized by Google

երկնից ։ Եւ կոչեաց առ ինքն Յիսուս մանուկ մի, կացոյց զնա ի մէջ նոցա, և ասէ . ամէն ասեմ ձեզ, եթէ ոչ դարձջիք և եղիջիք իբրև զմանկտի, ոչ մտանիցէք յարքայութիւն երկնից ։ Արդ որ խոնարհեցուսցանէ զանձն իբրև զմանուկս զայս, նա է մեծ յարքայութեան երկնից։ Եւ որ ոք ընկալցի մանուկ մի այսպիսի յանուն իմ, զիս ընդունի ։ Եւ որ ոք գայթագղեցուսցէ զմի ի փոքրկանց յայսցանէ յիս հաւատացելոց, լաւ է նմա՝ եթէ կախիցի երկան իշոյ ընդ պարանոց նորա՝ և ընկղմեսցի ի խոր ծովու ։ Վա՛յ աշխարհի ի գայթագղութեանց . հարկ է գալ գայթագղութեանց, բայց վա՛յ մարդոյն այնմիկ՝ յոյր ձեռն գայցէ գայթագղութիւն ։ Եթէ ձեռն քո կամ ոտն գայթագղեցուցանէ զքեզ, հատ զնա և ընկեա ի քէն . լաւ իցէ քեզ միաձեռանի կամ կաղ մտանել ի կեանս՝ քան երկուս ձեռս և երկուս ոտս ունել, և անկանել ի հուրն յաւիտենական ։ Եւ եթէ ակն քո գայթագղեցուցանէ զքեզ, խլեա զնա և ընկեա ի քէն . լաւ իցէ քեզ միականի մտանել ի կեանս, քան երկուս աչս ունել և անկանել ի գեհեն հրոյն ։ ԺԸ . 9 ։

ՀԱՄԲԱՐՁԻ ԳԿ

Տեսիլ փայլակնաձև զուարթ ։ Ի · Զ · Ձյ տան ։ 42 ։

ՍԱՂ . ՃԾ · Օրհնեցէք զԱստուած ի սրբութեան ։ 571 ։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մարկոսի ։ Թ . 29 ։

Տերամբ մերով Յիսուսիւ Քրիստոսիւ

Եւ անտի ելեալ անցանէին առ Գալիլեացւովք, և ոչ կամէր եթէ ոք գիտասցէ ։ Քանզի ուսուցանէր զաշակերտսն իւր և ասէր ցնոսա, թէ որդի մարդոյ մատնելոց է ի ձեռս մարդկան, և սպանցեն զնա . և իբրև սպանցի՝ յերիր աւուր յառնէ ։ Եւ նոքա ոչ գիտէին զբանն, և երկնչէին հարցանել ցնա ։ Եկն ի Կափառնաում . և իբրև եմուտ ի տուն, հարցանէր զնոսա . զի՞նչ վիճէիք զճանապարհայն ընդ միմեանս ։ Եւ նոքա լուռ լինէին . քանզի ընդ միմեանս վիճէին ի ճանապարհին թէ՝ ո՛վ մեծ իցէ ։ Եւ իբրև նստաւ՝ կոչեաց զերկոտասանսն, և ասէ ցնոսա . եթէ ոք կամի առաջին լինել՝ եղիցի ամենեցուն կրտսեր և ամենեցուն պաշտօնեայ ։ Եւ առեալ մանուկ մի կացոյց ի մէջ նոցա, և ընկալեալ զնա ի գիրկս իւր՝ ասէ ցնոսա . որ միանգամ յայսպիսի մանկտւոյ ընկալցի

Digitized by Google

յանուն իմ, զիս ընդունի. և որ զիս ընդունիցի, ոչ զիս ընդունի՝ այլ զայն որ առաքեացն զիս: Պատասխանի ետ նմա Յովհաննէս և ասէ. վարդապետ, տեսաք զոմն, զի յանուն քո դևս հանէր՝ և զմեր կնի ոչ շրջէր, և արգելաք զնա: Եւ նա ասէ. մի՛ արգելուք զնա. զի ոչ ոք է որ առնէ զօրութիւնս յանուն իմ, և կարիցէ հայհոյել զիս. զի որ ոչն է ընդ մեզ հակառակ, ի մեր կոյս է: Եւ որ ոք արբուսցէ ձեզ ջուր բաժակաւ յանունս յայս, թէ դուք Քրիստոսի էք, ամէն ասեմ ձեզ՝ մի՛ կորուսցէ զվարձս իւր: Եւ որ ոք գայթագղեցուսցէ զմի ի փոքրըկանցս որ հաւատան յիս, լաւ էր նմա առաւել՝ եթէ արկեալ էր ընդ պարանոց նորա երկան իշոյ, և ընկեցեալ ի ծով: Եւ եթէ գայթագղեցուսցէ զքեզ ձեռն քո, հատ՝ ընկեա ի քէն. զի լաւ իցէ քեզ խեղ մտանել ի կեանսն յաւիտենից, քան երկուս ձեռս ունել՝ և երթալ ի գեհեն ի հուրն անշէջ: (Ուր որդն նոցա ոչ մեռանի՝ և հուրն ոչ շիջանի:) Եւ եթէ ոտն քո գայթագղեցուսցէ զքեզ, հատ ընկեա զնա ի քէն. լաւ իցէ քեզ կաղ մտանել ի կեանսն յաւիտենից, քան երկուս ոտս ունել՝ և անկանել ի գեհեն (ի հուրն անշէջ: Ուր որդն նոցա ոչ մեռանի՝ և հուրն ոչ շիջանի): Եւ եթէ ակն քո գայթագղեցուսցէ զքեզ, հան զնա ի բաց. լաւ իցէ քեզ՝ միով ականբ մտանել յարքայութիւն Աստուծոյ, քան երկուս աչս ունել՝ և անկանել ի գեհեն: Ուր որդն նոցա ոչ մեռանի՝ և հուրն ոչ շիջանի: Զի ամենայն ինչ հրով յաղեսցի, (և ամենայն ողջակէզ աղիւ յաղեսցի): Բարւոք է աղ. և եթէ աղն անհամեսցի, իւ համեմեսցի. արդ դուք կալարուք յանձինս ձեր զաղն, և խաղաղութիւն արարէք ընդ միմեանս: 49:

Քարոզ. Խնդրեսցուք: Կեցո: Աշխ+. Թագաւոր:

---

## Ջ. ՉՈՐԵՔՇԱԲԱԹԻ. ԴՁ

### ՅԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԴՁ

Միածին Որդի Աստուծոյ. զաւետարան նշմըն սըր-
բոց մարգարէիցն մատանօր լուսափայլեալ պայծառա-
ցուցեր. օրհնեալ Տէր Աստուած մ ծ հարցըն ը

ցնա. յո՞ Տէր։ Եւ նա ասէ ցնոսա. ուր մարմին է, անդ
և արծուիք ժողովեսցին։ 37։

Քարոզ. Խնդրեսցուք։ Կեցո։ Աղօթք. Քում ամենազօր։

---

## ՅԵՐԵԿՈՅԻՆ

ՍԱՂ. ճԽԹ. Օրհնեցէք զՏէր յօրհնութիւն նոր։ 569։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի։ ԺԸ. 10։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս ասէ.

Զգոյշ լերուք՝ մի՛ արհամարհիցէք զմի ի փոքրկանցս
յայսցանէ. ասեմ ձեզ, զի հրեշտակք նոցա յերկինս՝ հա-
նապազ տեսանեն զերեսս Հօր իմոյ որ յերկինս է։ Զի
եկն որդի մարդոյ կեցուցանել զկորուսեալն։ Զի՞արդ թուի
ձեզ, եթէ լինիցի մարդոյ հարիւր ոչխար, և մոլորիցի
մի ի նոցանէ, ո՞չ թողուցու զիննսուն և զինն ոչխարն ի
լերինս, և երթիցէ խնդրիցէ զմոլորեալն. և եթէ լի-
նիցի գտանել զնա, ամէն ասեմ ձեզ՝ զի ուրախ լինի ի
վերայ նորա, առաւել քան ի վերայ իննսուն և իննանց
որ չիցեն մոլորեալ։ Այսպէս ոչ են կամք առաջի Հօր
իմոյ որ յերկինս է, եթէ կորիցէ մի ի փոքրկանցս յայս-
ցանէ։ Եթէ մեղիցէ քեզ եղբայր քո, երթ յանդիմանեա
զնա՝ յորժամ դու և նա միայն իցէք. եթէ լուիցէ քեզ,
շահեցար զեղբայրն քո։ Ապա թէ ոչ լուիցէ քեզ, առ
ընդ քեզ մի ևս կամ երկուս. զի ի բերանոյ երկուց և
երից վկայից հաստատեսցի ամենայն բան։ Իսկ եթէ և
նոցա ոչ լուիցէ, ասասջիր յեկեղեցւոջ. ապա թէ և ե-
կեղեցւոյն ոչ լուիցէ, եղիցի քեզ իբրև զհեթանոս և
զմաքսաւոր։ Ամէն ասեմ ձեզ. զոր կապիցէք յերկրի՝ ե-
ղիցի կապեալ յերկինս, և զոր արձակիցէք յերկրի՝ եղի-
ցի արձակեալ յերկինս։ Դարձեալ ասեմ ձեզ. եթէ եր-
կու ի ձէնջ միաբանիցեն յերկրի վասն ամենայն իրաց
զինչ և խնդրեսցեն՝ եղիցի նոցա ի Հօրէ իմմէ որ յերկինս
է։ Զի ուր իցեն երկու կամ երեք ժողովեալ յանուն իմ
անդ եմ ես ի մէջ նոցա։ Յայնժամ մատեաւ առ նա Պե-
տրոս և ասէ. Տէր, քանի՞ցս անգամ թէ մեղիցէ ինձ եղ-
բայր իմ, և թողից նմա. մինչև յեօ՞թն անգամ։ Ա-
ցնա Յիսուս. ոչ ասեմ քեզ՝ թէ մինչև յեօթն անգամ, այլ
մինչև յեօթանասնեկին եօթն։ Վասն այսորիկ նմանեցաւ
արքայութիւն երկնից առն թագաւորի, որ կամեցաւ հ

մար առնել ի մէջ ծառայից իւրոց։ Եւ իբրեւ սկսաւ առ-
նուլ, մատուցաւ առ նա պարտապան մի բիւր քանքա-
րոյ։ Իբրեւ ոչ ունէր հատուցանել, հրամայեաց զնա
վաճառել տէրն նորա, և զկին նորա և զորդիս և զա-
մենայն որ զինչ և ունիցի՝ և հատուցանել։ Եւ անկեալ
ծառայն երկիր պագանէր նմա և ասէր. երկայնամիտ
լեր առ իս, և զամենայն հատուցից քեզ։ Գթացեալ տէր
ծառային այնորիկ՝ արձակեաց զնա, և զփոխն եթող նմա։
Եւ ելեալ ծառայն այն՝ եգիտ զմի ի ծառայակցաց իւ-
րոց, որ պարտէր նմա հարիւր դահեկան, և կալեալ
զնա՝ խեղդէր և ասէր. հատո ինձ զոր պարտիս։ Արդ
անկեալ ծառայակցին առ ոտս նորա՝ աղաչէր զնա և
ասէր. երկայնամիտ լեր առ իս՝ և հատուցից քեզ։ Եւ
նա ոչ կամէր, այլ չոգաւ արկ զնա ի բանտ՝ մինչեւ հա-
տուսցէ զպարտսն։ Իբրեւ տեսին ծառայակիցքն նորա որ
ինչ եղեւն՝ տրտմեցան յոյժ, և եկեալ ցուցին տեառն իւ-
րեանց զամենայն որ ինչ եղեւն։ Յայնժամ կոչեաց զնա
տէրն իւր և ասէ. ծառայ չար, զամենայն զպարտսն
թողի քեզ՝ վասն զի աղաչեցեր զիս. իսկ արդ ո՞չ էր
պարտ և քեզ ողորմել ծառայակցին քում, որպէս և ես
քեզ ողորմեցայ։ Եւ բարկացեալ տէրն նորա՝ մատնեաց
զնա դահճաց՝ մինչեւ հատուսցէ զամենայն զպարտսն։
Նոյնպէս և Հայր իմ որ յերկինս է՝ արասցէ ձեզ, եթէ
ոչ թողուցուք իւրաքանչիւր եղբօր իւրում ի սրտից ձե-
րոց զյանցանս նոցա։ 35։

ՀԱՄԲԱՐՁԻ ԴՋ

Աճապին ձայնիւդ քո Քրիստոս։ Գ · Երեք փոխ։ 45։

ՍԱՂ · ԾԶ · Օրհնեցէք զԱստուած ի սրբութեան։ 571։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մարկոսի։ Ժ · 1։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ անտի յարուցեալ գայ ի սահմանս Հրէաստանի,
յայնկոյս Յորդանանու, և երթայր դարձեալ խռնեալ
ժողովուրդն առ նա, և որպէս սովոր էր միւսանգամ ու-
սուցանէր զնոսա։ Իսկ փարիսեցիքն մատուցեալ փորձե-
լով հարցանէին զնա և ասէին, եթէ արժա՞ն իցէ առն
զկին իւր արձակել։ Նա պատասխանի ետ նոցա և ա-
սէ. զի՞նչ պատուիրեաց ձեզ Մովսէս։ Եւ նոքա ասեն.

Մովսէս հրաման ետ՝ գիր մեկնելոյ գրել և արձակել: Պատասխանի ետ Յիսուս և ասէ ցնոսա. վասն խստասրտութեան ձերոյ գրեաց զպատուիրանն զայն: Այլ ի սկզբանէ արարածոց՝ արու և էգ արար զնոսա Աստուած. և ասէ. Վասն այսորիկ թողցէ այր զհայր իւր և զմայր, և երթիցէ զհետ կնոջ իւրոյ, և եղիցին երկոքեան ի մարմին մի: Եւ այսուհետև ոչ են երկու՝ այլ մարմին մի. արդ զոր Աստուած զուգեաց, մարդ մի՛ մեկնեսցէ: Եւ ի տան դարձեալ աշակերտքն զնոյն հարցին ցնա. և ասէ ցնոսա. եթէ այր արձակեսցէ զկին իւր և առնուցէ այլ, շնայ. և կին՝ եթէ ելցէ յառնէ իւրմէ և եղիցի առն այլում, շնայ: 12:

Քարոզ. Խնդրեսցուք: Կեցո: Աղօթք. Թագաւոր:

# Ջ· ՀԻՆԳՇԱԲԱԹԻ · ԴԿ

## ՀԱՄԲԱՐՁՈՒՄՆ

### ՏԵԱՌՆ ՄԵՐՈՅ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ



### Ի ԳԻՇԵՐԻ

ՀՈՏԵՒԱԿ ՇԱՐԱԿԱՆ ԴԿ

Մնծահրաշ այս խորհուրդ: Էջ տառն: 729:

Ձհնէ Քար. Եւ ես խաղ: Քահ. Օրհնութիւն: Եւ —

ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԴՁ

ՀԱ՛ՄԲԱ՛ՐՁՄԱ՛Ն Տէ՛րըն մե՛ր յե՛րկինս. մնալով ա՛շակերտա՛ցն. Նստա՛րուք ի քաղաքի՛դ յե՛րուսաղէմ. մի՛նչև զգե՛նուցուք զօ՛րութիւն ի՛ բարձա՛նց: Մխիթարեա՛լ սուրբ առա՛քեա՛լքն. մի՛ախորհ և՛ միակրօ՛նքն. մի՛աբան նստէի՛ն ի սուրբ վե՛րնատա՛նն. և՛ ակն ունէի՛ն զգա՛լըստեան սուրբ Հոգւո՛յն: Ցա՛նկա՛րծակի՛ եհա՛ս. ի՛ նմա՛նութի՛ւն լուսոյ փայլմա՛նցն. և՛ եկեալ բնակե՛ցաւ ի սուրբ առաքեա՛լսն. մի՛նչդեռ նստէի՛ն ի սուրբ վե՛րնատանն:

✝ Համբարձաւ Տէրըն մեր Քրիստոս. օրհնութեամբ ընդ ամպս երկնից. եւ առաքելոցն երկրպագեալ դարձան յԵրուսաղէմ. միաբանութեամբ վերառաքէին զաղօթս։ Մըտեալ ի յերկինըս բիւրաւոր զօրօք բազմութեամբ հրեշտակաց. որք աղաղակէին եւ ասէին. օրհնեալ եկեալ ի յանուն Տեառն։

Անհասին ձայնիւ ըստ քո Քրիստոս. ի վերայ խաչին դողացուցեր զարարածս ամենայն. զերկնային եւ զերկրաւորս բընութիւնս։ Անհասին երեւումըն հրեշտակին. զարհուրեցոյց ըզկանայսն ասելով. զի խընդրէք ըզկենդանին ընդ մեռեալս։ Եւ յահէ զօրութեան Աստուածորդւոյն զարհուրեցան կարապետքն դըժոխոցն ասելով. համբարձէք իշխանք ըզդրունըս ձեր ի վեր։

Փառաբանեմք զՀայր Որդի. որ վասն մեր խաչեցար զդըժոխս աւերեալ յարեար յաւուր երրորդի. Փառք յարութեան քո Տէր։ Հրեշտակապետին իջմամբ. որ ըզպահապանսն երկիւղիւ զարհուրեցոյց առ դրանըն գերեզմանին. փառք։ Եւ ըզքանչելիս սուրբ կանանցն. աւետարանէր ասելով յարեաւ Քրիստոս յարուցիչըն մեռելոց. փառք։

Զանճառըդ քո Քրիստոս փառաւորեմք ըզմարդանալդ. ի գըլխոց լերանց հրատարակեմք ըզքո քաղցրութիւնդ. քանզի հարեր ըզպատերազմ եկեալդ ի փըրկութիւն մեզ։ Զյաղթօղըդ քո Քրիստոս գովեմք ըզզօրութիւն. քանզի վանեցեր զընդդիմամարտ թըշնամին եւ դարձուցեր ըզգերութիւն եկեալդ։ Բըղխեաց երկիր զողորմութիւն. եւ նորոգեցաւ զօրհնութիւն. քանզի Աստուած ծընընդեամբ ի միջոյ կուսէն ի փըրկութիւն մեզ յայտնեցաւ. աւերեաց ըզդըժոխս։

Անեղականից Բանըդ Հօր և եղելոց պատճառ. որ ծը-

նար ի կուսէն ∥ ըզքեզ ծանեաք Աստուած · աղաչեմք
ողորմեա ազգի մարդկան ։ Սերովբէիցն անհաւար եւ դա-
տաւոր կենդանեաց եւ մեռելոց · որ ի խաչին բեւեռե-
ցար ըզքեզ ։ Կենդանութեան աղբիւր եւ պարգե-
ւատու տուող ողորմութեան որ յարեար ի մեռելոց
ըզքեզ ։

Հգ · Առաքելոց աղաւնոյ · իջանելով մեծաձայն հնչ-
մամբ ի բարձանց · ի նմանութիւն լուսոյ փայլման
հրազինեաց անկիզելի զաշակերտսն · մինչդեռ նըս-
տէին ի սուրբ վերնատանն ։ Աննիւթական աղաւնի ·
անքննելի որ քննէ ըզխորս Աստուծոյ · զոր առաքեալ ի
Հօրէ պատմէ զանճառ և ըզմիաւորեալ զաշակերտսն ·
զոր քարոզեցին համազգական ։ Օրհնութիւն ի բար-
ձունս · ելողին ի Հօրէ Հոգւոյն սրբոյ · որով առա-
քեալքն արբեցան անմահական բաժակաւն · Եւ
հրաւիրեցին զերկիրս ի յերկինս ։

ՀՆ · Բարձրեալ թագաւոր յաւիտենից · Հայր ա-
նըսկիզբն · որ զՄիածինդ առաքեցեր ի փրկութիւն
ազգի մարդկան · ∥ աղաչեմք ըզքեզ յիշեա զհոգիս
նըննջեցելոց մերոց եւ հանգո ի քում ըյարքայու-
թեանդ ։ Բանդ Աստուած երեւեալ մարմնով յերկիր ·
քահանայապետ ճշմարիտ · որ ի վերայ խաչին պա-
տարագեալ բարձող մեղաց զանձն անարատ · աղաչեմք ։
Երանական շնորհաց բաշխող · սուրբ Հոգիդ
ճշմարիտ · որ վերըստին ծնընդեամբ աւազանին կո-
չեցեր յորդեգրութիւն ըզտոլի եզերըս · գըթութեամբ
քո · նորոգեա զհոգիս նըննջեցելոց մերոց եւ ։

ՄԾ · Որ խոնարհեցար յերկնից · անմեկնելիդ ի Հօրէ
Որդի Աստուծոյ եւ առեր մարմին ի սրբոյ կուսէն
∥ հայցմամբ ծածկողին լուսոյդ և մեզ ողորմեա ։ Որ

մահուամբ քով կեցուցեր ըզմեզ. եւ յարուցեալ համբարձար առ Հայր ի յերկինս. այսօր երկնաւոր զօրք իջեր ի փոխումըն մօր քո եւ կուսի հայցմամբ։ Որ յիմանալի խորանըդ. բարձրացոյց ըզքեզ մայր Աստուծոյ. անճառելի փառօք միածին Որդին առ նա միշտ բարեխօսեա վասն անձանց մերոց։

ԽԶ. Ցընծայ այսօր փառօք Միածնին. լեառըն Թաբոր հանդերձ Հերմոնիւ. բարձրացեալ զերամգոյն Սինայ. եւ էջք Աստուծոյ դուռն երկնից ի նմա։ Ցընծան այսօր լերինք Աստուծոյ. արարողին եղեալք ընդ առաջ. պարակցեն յաւիտենական լերանցն. դասք առաքելոց եւ մարգարէից։ — Փառք Հօր։ Ցընծայ այսօր լեառըն վերին Սիոն. հարսնարան անմահ արքային. տեսանելով զերկնաւոր փեսայն. զարդարեալ լուսով հայրական փառօք։

— Այժմ և միշտ։ Նըստեալ ընդ աջմէ ծընողին. կատարելով ըզխոստացեալ պարգեւս. մըխիթարիչ սուրբ Հոգին զայ առ ձեզ. աղբերացուցանել զմեծ զողորմութիւն։

Մինչև ի Պենտեկոստէն Մաղթանք. Փառք հրաշափառ համբարձման։ Եւ Ալէլուիա. Համբարձման է յոյնեքն ....։

---

ՑԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐ Ց ԴԿ

Օրհնեսցի պըսակ քաղցրութեան քո Տէր որ պահեցեր ըզմեզ յերկրի. այսօր համբարձար փառօք յերկինս առ Հայր հրեշտակաց դասուք. ‖ Օրհնեալ Տէր Աստուած հարցըն մերոց։ Հիացան վերինքն ընդ մարդկային քո կերպ հարցաբանեալք զեսայեայն. ով է սա դիմեալ յերկրէ արիւնազգեստեալ. օրհնեալ։ Երգէին հրեշտակքն ըզզուարթեան առաջն առ բարա-

պանըս դրանց երկնից · ասեն համբարձէք իշխանք ըզ-դրունըս ձեր ի վեր և մըտցէ արքայ · օրհնեալ Տէր Աստուած հարցըն մերոց ։

Գ· ԸզՏէր ‖ օրհնեցէք եւ բարձր արարէք ըզնա յաւիտեանս ։ Որ ելն ի կառս իւր և ընկձեաց զիշխա-նըսն մահու · օրհնեցէք ։ Որ եդ յամպս ըզգնացս իւր եւ վերացաւ առ հայր ի յերկինս · օրհնեցէք ։ Որ նըստի ընդ աջմէ հօր հաւասար սուրբ հոգւոյն · օրհ ։

ՄԵԾԱՑՈՒՑԷ ԴԿ

Աստուածածին մայր լուսոյ · արեգականն արդարու-թեան արեւելք · որ ի խաւար աշխարհի ծագեցեր ըզ-լոյսըն գերազանց · ‖ օրհնութեամբ ըզքեզ բարեբանեալ մեծացուցանեմք ։ Ամպ թեթեւ լուսաւոր · անընդդա-նակ խոնաւութեան · որ ըզցօղըն կենաց ի ցամաքեալ բնութիւնս ցօղեր · օրհ ։ Սերովբէ հողեղէն · եւ մար-մնաւոր քերովբէ · որ զանտեսն ի նոցունց յորովայնի քում կրեցեր · օրհ ։

ՈՂՈՐՄԵԱ ԴԿ

Որ ողորմութեամբ քո հիմնեցեր զաշխարհս · եւ ի-ջեալ փըրկեցեր ի յանիծիցն Ադամայ · ‖ այսօր համ-բարձար փառօք յերկինըս Տէր մեր ողորմեա մեզ Աստուած ։ Որ եւ լեր ի բարձրադիտակ քառաթեւսն · առնելով զհեծելութիւն փըրկութեան · այսօր ։ Որ ե-րեքօրեայ թաղմամբ քո դատապարտեցեր ըզդաւաճա-նող վիշապն · այսօր ։

ՏԷՐ ԶԵՐԿՆԻՑ ԴԿ

Իշխանութիւնք երկնից զարհուրեցան տեսանելով զելըն քո Քրիստոս · ընկեր առ ընկեր սարսեալ ասէին ով է սա թագաւոր փառաց ։ Սա է մարմնացեալ Բանն Աստուած որ ի խաչին ըզմեղս ըսպան · եւ վերբարձեա-

ցեալ փառօք գայ յերկինըս Տէր հըզօր զօրութեամբ ճուրովլ : Սա է որ ի գերեզմանէն յարեաւ և աւերեաց ըզդըժոխս . Եւ վերհամբարձեալ փառօք գայ առ Հայր Տէր կարող ի պատերազմի :

Առաւօտուն ինչ մինչև ի Պենտակոստէ ըստ այս ասա :

Զյարութիւն զՓրկչին օրհնեսցուք , զՓրկչին մերոյ օրհնեսցուք զյարութիւն :

Համբարձաւ Աստուած օրհնութեամբ , և Տէր մեր ձայնիւ փողոյ :

Իսկ ըստ Սուրբ Աստուածին Մաղ . Փրկել : Սաղ . Վասն լսելի : Քահ . Օրհնութիւն : Եւ ելանեն խաչն և աւետարանաւն և ամենայն զարդարեալ ի դուրս ասելով

ՇԱՐԱԿԱՆ ԴԶ

Համբարձաւ Տէրն մեր յերկինս : Երգէ տան : 706 :

Զկնի ՍԱՂՄՈՍ ԽԶ . ի Ընթ

ԿԸ . Համբարձաւ Աստուած օրհնութեամբ , և Տէր մեր ձայնիւ փողոյ :

Փխ . Ծափս հարէք , ամենայն հեթանոսք , աղաղակեցէք առ Աստուած ի ձայն ցնծութեան :

Տէր բարձրեալ և ահարկու , թագաւոր մեծ ի վերայ ամենայն երկրի :

Հնազանդ արար զժողովուրդս ընդ մեզ , և զհեթանոսս ի ներքոյ ոտից մերոց :

Ընտրեաց զմեզ իւր ի ժառանգութիւն , զգեղեցկութեանցն Յակովբայ զոր և սիրեաց :

Համբարձաւ Աստուած օրհնութեամբ , և Տէր մեր ձայնիւ փողոյ :

Սաղմոս ասացէք Աստուծոյ մերում , սաղմոս ասացէք թագաւորին մերում , սաղմոս ասացէք :

Թագաւոր մեծ ի վերայ ամենայն երկրի Աստուած է , սաղմոս ասացէք նմա իմաստութեամբ :

Թագաւորեաց Աստուած ի վերայ հեթանոսաց , Աստուած նստաւ յաթոռ սրբութեան իւրոյ :

Իշխանք ժողովրդոց ժողովեցան առ Աստուած Աբրահամու , զի Աստուծոյ զօրութիւնք յերկրէ յոյժ համբարձան :

Ալէլուիա . ալէլուիա :

Digitized by Google

ԸՆԹերցուած յերգոց երգոյն Սողոմոնի: Գ. 6:

Ո՞վ է սա որ ելեալ գայ յանապատէ՝ իբրև զստեղն ծխոյ խնկեալ զմուռս և կնդրուկ յամենայն փոշւոյ իւղագործաց։ Ահա գահոյք Սողոմոնի. վաթսուն սպառազէնք շուրջ զնովաւ ի քաջացն Իսրայելի. ամենեքեան սուսերաւորք հմուտք պատերազմի, այր իւրաքանչիւր սուր յաղդեր յարհաւրաց գիշերոյ։ Գահաւորակ արար իւր արքայ Սողոմոն ի փայտից Լիբանանու. զսիւնս նորա գործեաց արծաթիս, զկոնք նորա ոսկի և զձեղուն նորա ծիրանի, զմէջ նորա ականակապ. տարածեալ զսէրն ի դըստերացն Երուսաղեմի։ Ելէք և հայեցարուք, դստերք Սիոնի, յարքայ Սողոմոն ի պսակն որով պսակեաց զնա մայր իւր յաւուր փեսայութեան իւրոյ, և յաւուր ուրախութեան սրտի իւրոյ։ Ահաւասիկ կաս գեղեցիկ, մերձաւոր իմ, ահաւասիկ կաս գեղեցիկ, աչք քո աղաւնիք բաց ի լռութենէ քումմէ։ Վարսք քո իբրև զերամակս այծից որք երևեցան ի Գաղաադէ։ Ատամունք քո իբրև զերամակս կտրելոց որք ելանեն ի լուալեաց. ամենեքեան երկուորիք են, և անորդի ոչ գոյ ի նոսա։ Իբրև զթել որդան են շրթունք քո, և խօսք քո գեղեցիկք. իբրև զկեղև նռան են այտք քո՝ բաց ի լռութենէդ քումմէ։ Դ. 3։

ԸՆԹերցուած յեսայեայ մարգարէէ: ԿԳ. 1:

Իսկ այս ո՞վ է որ դիմեալ գայ յԵդովմայ։ 484։

ԸՆԹերցուած ի գործոց առաքելոց: Ա. 1:

Զբանն առաջին զոր արարի՝ վասն ամենայնի, ո՜ Թէոփիլէ, զոր սկսաւ Յիսուս առնել և ուսուցանել, մինչև յօրն պատուիրելոյ առաքելոցն ի ձեռն Հոգւոյն սրբոյ՝ զորս ընտրեացն և վերացաւ։ Որոց յանդիման կացոյց զինքն կենդանի յետ չարչարանացն իւրոց, ի բազում արուեստս, յաւուրս քառասուն երևել նոցա և ասել վասըն արքայութեանն Աստուծոյ։ Եւ ի հաղորդել ընդ նոսա հացի՝ պատուէր տայր նոցա յԵրուսաղեմէ մի՛ մեկնել, այլ սպասել աւետեացն Հօր՝ զոր լուարուքն յինէն։ Զի Յովհաննէս մկրտեաց ի ջուր, այլ դուք մկրտիցիք ի Հոգին սուրբ, ոչ յետ բազում ինչ աւուրցս այսոցիկ։ Եւ նոքա մատուցեալ հարցանէին զնա և ասէին. Տէր, եթէ ի ժամանակի՞ աստ յայսմիկ հաստատելոց իցես զար-

Digitized by Google

քայութիւնն իսրայելի: Ասէ ցնոսա. ոչ է ձեզ գիտել զժամս և զժամանակս, զոր Հայր եդ յիւրում իշխանութեան. այլ առջիք զօրութիւն ի հասանել Հոգւոյն սրբոյ ի վերայ ձեր, և եղիջիք ինձ վկայք յԵրուսաղէմ և յամենայն Հրէաստանի և ի Սամարիա, և մինչև ի ծագս երկրի: Եւ զայս իբրև ասաց՝ մինչդեռ հայէին նոքա՝ վերացաւ, և ամպն կալաւ զնա յաչաց նոցա: Եւ մինչդեռ պշուցեալ հայէին ընդ երկինս երթալոյ նորա, և ահաւասիկ արք երկու երևեցան նոցա ի հանդերձս սպիտակս, որք և ասացինն. արք Գալիլեացիք, զի՞ կայք հայեցեալ ընդ երկինս. այս Յիսուս՝ որ վերացաւն ի ձէնջ յերկինս, սոյնպէս եկեսցէ զոր օրինակ տեսէք զնա երթեալ յերկինս: Ապա դարձան յԵրուսաղէմ յանուանեալ լեռնէն Ձիթենեաց, որ է մերձ յԵրուսաղէմ ըստ շաբաթուն ճանապարհի: Եւ իբրև մտին, ելին ի վերնատունն ուր վանքն իսկ էին, Պետրոս և Յակոբոս և Յովհաննէս և Անդրէաս, Փիլիպպոս և Թովմաս, Բարթողոմէոս, և Մատթէոս, Յակոբոս Ալփեան, և Շմաւոն նախանձայոյզ և Յուդա Յակոբեան: Սոքա ամենեքեան էին հանապազորդեալ միաբան յաղօթս հանդերձ կանամբք և Մարեմաւ մարբն Յիսուսի և եղբարբք նորա: 14:

Ձայնի– Ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա.

Համբարձաւ Աստուած օրհնութեամբ, և Տէր մեր ձայնիւ փողոյ:

Սրբոյ Աւետարանին որ ըստ Ղուկասու: ԻԴ. 41:

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ մինչդեռ տակաւին չհաւատային ի խնդութենէն, և զարմացեալ էին, ասէ ցնոսա. ունի՞ք ինչ կերակուր աստ: Եւ նոքա ետուն նմա ձկան խորովելոյ մասն և խորիսխ մեղու: Եւ ա՛ռ եկեր առաջի նոցա, և զմնացորդսն ետ նոցա: Եւ ասէ ցնոսա. այս բանք են զոր խօսեցայ ընդ ձեզ՝ մինչ առ ձեզն էի, թէ պարտ է լնուլ ամենայն գրելոցն յօրէնսն Մովսեսի և ի մարգարէս և ի սաղմոսն վասն իմ: Յայնժամ եբաց զմիտս նոցա՝ իմանալ զգիրս: Եւ ասէ ցնոսա, թէ այսպէս պարտ էր չարչարել Քրիստոսի, և յառնել ի մեռելոց յաւուր երրորդի, և քարոզել յանուն նորա ապաշխարութիւն և թողութիւն մե-

Digitized by Google

ղաց յամենայն ազգս՝ սկսեալ յԵրուսաղեմէ. և դուք էք վկայք այսոցիկ: Եւ ահա ես առաքեմ զաւետիս Հօր իմոյ ի ձեզ. և դուք նստարուք ի քաղաքիս յԵրուսաղէմ, մինչև զգենուցուք զօրութիւն ի բարձանց: Եհան զնոսա մինչև ի Բեթանիա, և ամբարձեալ զձեռս իւր օրհնեաց զնոսա: Եւ եղև յօրհնելն նորա զնոսա՝ մեկնեցաւ ի նոցանէ, և վերանայր յերկինս: Եւ նոցա երկիր պագեալ նմա՝ դարձան յԵրուսաղէմ ուրախութեամբ մեծաւ: Եւ էին հանապազ ի տաճարին, գովէին և օրհնէին զԱստուած: 53:

Զհնչ Սաղմ. Ժողովք. Իւ Ես խաղ: Վասն ի վերուստ: Եւ երեսնաւորեալն զանդաստանն և զողջախոհս: Եւ աղօթ Քարոզ. Սուրբ խաչիւ: Աղօթք. Պահպանեա: Եւ է ժամանակն օրհնեալ

ՇԱՐԱԿԱՆ ԴԶ

Համբարձաւ Տէրն մեր Քրիստոս: Երէք տուն: 707:

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մարկոսի: ԺԶ. 9:

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Յարուցեալ (Յիսուս) առաւօտուն առաջին միաշաբաթուն՝ երևեցաւ Մարիամու Մագդաղենացւոյ, յորմէ հանեալ էր զեօթն դևս: Եւ նա երթեալ պատմեաց այնոցիկ որ ընդ նմայն էին, մինչդեռ լային և սգային: Նոքա իբրև լուան թէ կենդանի է և երևեցաւ նմա, ոչ հաւատացին: Յետոյ երևեցաւ այլով կերպարանաւ՝ որք երթային յանդաստան: Նոքա չոգան պատմեցին այլոց, և ոչ նոքա հաւատացին: Յետոյ մինչդեռ բազմեալ էին մետասանքն, երևեցաւ նոցա, և թշնամանեաց զանհաւատութիւն նոցա և զխստասրտութիւն. զի որ երևեցաւ նոցա յարուցեալ ի մեռելոց, և նոքա ոչ հաւատացին: Եւ ասէ ցնոսա. երթայք յաշխարհ ամենայն, և քարոզեցէք զաւետարանն ամենայն արարածոց: Որ հաւատայ և մկրտիցի՝ կեցցէ, և որ ոչն հաւատայ՝ դատապարտեսցի: Նշանք՝ այնոցիկ որ հաւատասն երթիցեն զհետ՝ այսոքիկ. յանուն իմ դևս հանիցեն, լեզուս խօսեսցին, ի ձեռս իւրեանց օձս բարձցեն, և եթէ մահացու ինչ դեղ արբցեն՝ նոցա ինչ ոչ վնասեսցէ, ի վերայ հիւանդաց ձեռս դիցեն և բժշկեսցեն: Եւ ինքն Տէր Յիսուս յետ խօսելոյն ընդ նոսա համբարձաւ յերկինս, և նստաւ ընդ աջմէ Հօր: Եւ նո-

քա ելեալ քարոզէին ընդ ամենայն երկիր Տեառն գոր-
ծակցութեամբ, և զբանն հաստատէին ամենայն նշանօք՝
որ երթայր զհետ նոցա ։ 20 ։

### Աղ․ ՍԱՂՄՈՍ ԻԳ․ Յայնխ․

ԿՑ․ Համբարձէք իշխանք զդրունս ձեր ի վեր, համ-
բարձցին դրունք յաւիտենից և մտցէ թագաւոր փառաց ։
Փխ․ Տեառն է երկիր լրիւ իւրով, աշխարհ և ամե-
նայն բնակիչք նորա ։
Նա ինքն ի վերայ ծովու հիմունս արկ նմա, ի վերայ
գետոց պատրաստեաց զնա ։
Ո՞վ ելցէ ի լեառն Տեառն, կամ ո՞վ կացցէ ի տեղւոջ
սրբութեան նորա ։
Որ սուրբ է ձեռօք և անբիծ սրտիւ, որ ոչ ա՛ռ զնա-
նրութիւն յանձն իւր, և ոչ երդուաւ նենգութեամբ ընդ
ընկերի իւրում ։
Սա առցէ զօրհնութիւն ի Տեառնէ, զողորմութիւն
յԱստուծոյ փրկչէ իւրմէ ։
Այս ազգ է որ խնդրէ զՏէր, խնդրէ տեսանել զերեսս
Աստուծոյ Յակովբայ ։
Համբարձէք իշխանք զդրունս ձեր ի վեր, համբարձցին
դրունք յաւիտենից և մտցէ թագաւոր փառաց ։
Ո՞վ է սա թագաւոր փառաց, Տէր հզօր զօրութեամբ
իւրով, Տէր հզօր ի պատերազմի ։
Համբարձէք իշխանք զդրունս ձեր ի վեր, համբարձցին
դրունք յաւիտենից և մտցէ թագաւոր փառաց ։
Ո՞վ է սա թագաւոր փառաց, Տէր զօրութեանց. սա
ինքն է թագաւոր փառաց ։

### Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու ։ ԺԸ․ 1 ։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Ասաց և առակ մի նոցա, առ այն՝ թէ պարտ է յա-
մենայն ժամ կալ նոցա յաղօթս և մի՛ ձանձրանալ. ասէ.
դատաւոր մի էր ի քաղաքի ուրեմն, յԱստուծոյ ոչ եր-
կընչէր և ի մարդկանէ ոչ ամաչէր ։ Եւ այրի մի էր ի
նմին քաղաքի, գայր առ նա և ասէր. դատ արա ինձ
յոսոխէ իմմէ ։ Եւ ոչ կամէր ի բազում ժամանակս. յետ
այնորիկ ասէ ի մտի իւրում. թէ և յԱստուծոյ ոչ երկըն-
չիմ, և ի մարդկանէ ոչ ամաչեմ, գոնէ վասն աշխատ

Digitized by Google

առնելոյ զիս այրւոյն՝ արարից նմա դատ, զի մի՛ իսպառ եկեալ թախանձիցէ զիս: Եւ ասէ Տէր. լուարուք զինչ դատաւորն անիրաւութեան ասէր. իսկ Աստուած ո՞չ առնիցէ վրէժխնդրութիւն ծառայից իւրոց, որ աղաղակեն առ նա ի տուէ և ի գիշերի, և երկայնամի՞տ միայն լինիցի առ նոսա. այո ասեմ ձեզ, զի արասցէ վրէժխընդրութիւն նոցա վաղվաղակի. իսկ որդի մարդոյ եկեալ՝ գտանիցէ՞ արդեօք հաւատս յերկրի: Ասաց և առ ոմանս պանծացեալս յանձինս թէ արդարք իցեն՝ և խոտիցեն զբազումս, զառակս զայս. արք երկու ելին ի տաճարն կալ յաղօթս, մին փարիսեցի և միւսն մաքսաւոր: Փարիսեցին կայր մեկուսի, և զայս առանձինն աղօթս մատուցանէր. Աստուած իմ, գոհանամ զքէն. զի ոչ եմ իբրև զայլս ի մարդկանէ, զյափշտակօղս և զանիրաւս և զշունս, կամ իբրև զայս մաքսաւոր. այլ պահեմ երկիցս ի շաբաթու, և տամ տասանորդս յամենայն ստացուածոց իմոց: Եւ մաքսաւորն կայր մեկուսի, և ոչ կամէր և ոչ զաչսն ընդ երկինս ամբառնալ. այլ կոծէր զկուրծս իւր և ասէր. Աստուած քաւեա զիս զմեղաւորս: Ասեմ ձեզ. էջ սա արդարացեալ ի տուն իւր քան զնա: Զի ամենայն որ բարձրացուցանէ զանձն իւր՝ խոնարհեսցի. և որ խոնարհեցուցանէ զանձն՝ բարձրասցի: 14:

Քարոզ. Խնդրեսցուք: Կեցո: Աղօթք. Քում ամենազօր և հրաշալի համբարձմանդ:

---

## Ց Ե Ր Ե Կ Ո Յ Ի Ն

Ցիններորդ ժամն ժողովին ի դասն եկեղեցւոյն. և ասեն

ՍԱՂ. ԽԶ. կՑ. Համբարձաւ: Փխ. Ծափս: է Ըն.: 711:

Գիրք և առաքելոյն ընթերցուածն նոյնպէս:

Եւ ապա ելանեն խաչիւ և աւետարանաւ և ամենայն ժողովուրդն ի դուրս ասելով

### ՇԱՐԱԿԱՆ ԴՁ

Համբարձաւ Տէրն մեր Քրիստոս օրհնութեամբ: 707:

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի: ԺԹ. 1:

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ եղև իբրև կատարեաց (Յիսուս) զբանս զայսոսիկ,

փոխեցաւ ի Գալիլեէ՝ և եկն ի սահմանս Հրէաստանի յայնկոյս Յորդանանու ։ Եւ գնացին զհետ նորա ժողովուրդք բազումք , և բժշկեաց զնոսա անդ ։ Եւ մատուցեալ առ նա փարիսեցիքն , փորձէին զնա և ասէին . եթէ արժա՞ն իցէ ումեք արձակել զկին իւր, ըստ ամենայն վնասու ։ Պատասխանի ետ նոցա և ասէ. չիցէ՞ ընթերցեալ ձեր՝ թէ որ հաստատեացն ի սկզբանէ՝ արու և էգ արար զնոսա և ասէ. վասն այսորիկ թողցէ այր ըզհայր և զմայր՝ և երթիցէ զհետ կնոջ իւրոյ , և եղիցին երկոքեան ի մարմին մի ։ Ապա ուրեմն ոչ են երկու՝ այլ մի մարմին ։ Արդ զոր Աստուած զուգեաց՝ մարդ մի՛ մեկնեսցէ ։ Ասեն ցնա . իսկ Մովսէս ընդէ՞ր պատուիրեաց մեզ տալ թուղթ մեկնելոյ՝ և արձակել ։ Ասէ ցնոսա . Մովսէս վասն խստասրտութեան ձերոյ հրամայեաց ձեզ արձակել զկանայս ձեր, այլ ի սկզբանէ ոչ եղև այնպէս ։ Բայց ասեմ ձեզ , զի ամենայն որ արձակէ զկին իւր՝ և ոչ վասն պոռնկութեան , և առնիցէ այլ՝ շնայ , և որ զարձակեալն առնէ՝ շնայ ։ Ասեն ցնա աշակերտքն իւր . եթէ այդպէս ինչ վնաս իցէ ընդ այր և ընդ կին , լաւ է չամուսնանալ ։ Եւ նա ասէ ցնոսա . ոչ ամենեքեան բաւական են այդմ բանի , այլ որոց տուեալ է ։ Զի են ներքինիք՝ որ յորովայնէ մօր իւրեանց ծնան այնպէս, և են ներքինիք՝ որ ի մարդկանէ եղեն ներքինիք , և են ներքինիք՝ որ զանձինս իւրեանց արարին ներքինիս վասըն արքայութեան երկնից. որ կարողն է տանել՝ տարցի ։ Յայնժամ մատուցան առ նա մանկտի, զի ձեռն դիցէ ի վերայ նոցա և աղօթս արասցէ . և աշակերտքն նորա սաստէին նոցա ։ Ասէ Յիսուս . թոյլ տուք մանկտւոյդ՝ և մի՛ արգելուք զդոսա գալ առ իս, զի այդպիսեացդ է արքայութիւն երկնից ։ Եւ եդեալ ձեռս ի վերայ նոցա՝ գնաց անտի ։ 15 ։

Ի— փեսանոցերեն ղանդատառանն և ղաշխարհս ։

Զինչ Քարոզ . Սուրբ խաչիւս ։ Աղօթք . Պահպանեա ։

Ե— է ղառնոյն ակառնէն ղերեկոյէ ժամն ։

Սարկաւագն քարոզէ . Եւ ևս խաղաղութեան ։ Քահանայն . Օրհնութիւն և փառք ։

Ե— առէն Խոնարհեցո և Ապրեցո ։

ՀԱՄԲԱՐՁԻ ԴՋ

Ո՛րք տընկակից եղաք նըմանութեան մահու քո Որդի Աստուծոյ. արժանաւորեա ըզմեզ կերպարանակից լինել քեզ փառաց թագաւոր. ‖ քեզ սաղմոս երգեսցեն եկեղեցիք սրբոց ընդ զերգս հոգեւորս: Զհինն մարդըն խաչակից քեզ արարեր եւ ըզխայթոց մեղացըն շիջուցեր. ազատեցեր ըզմեզ կենարար փայտիւն յորում մածար եւ շիթք արեան քո արբուցին ըզտիեզերս. քե: Վասն գըթութեանըդ քո աստուածային մարդեղութեանըդ հաւասարեցեր ըզմեզ մարմնոյ քո եւ արեան. պատարագաւըդ Հօր ի հոտ անուշից. ըզմարմինդ տաս ի մէնջ. եւ համբարձար լուսափայլ ամպովք. յայտնեցար իշխանութեանց եւ պետութեանց որք հիացեալ հարցանէին եթէ այս ով է որ դիմեալ գայ յԵդովմայ. եւ յեկեղեցւոյ քո ուսան ըզբազմապատիկ զիմաստութիւնըն քո. քե:

Հետ սորա սոա.

Համբարձաւ Տէրն մեր յերկինս: Երգէ տուն: 706:

ՍԱՂ. ԽԳ. կց. Համբարձէք: փխ. Տեառն է: 715:

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մարկոսի: Ժ. 13:

Առ Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ մատուցանէին (առ Նա) մանկտի՝ զի ձեռն դիցէ նոցա. իսկ աշակերտքն սաստէին այնոցիկ որ մատուցանէինն: Իբրեւ ետես Յիսուս, բարկացեալ սաստեաց նոցա եւ ասէ. Թոյլ տուք մանկտւոյդ գալ առ իս, եւ մի արգելուք զդոսա. զի այդպիսեացդ է արքայութիւն Աստուծոյ: Ամէն ասեմ ձեզ, որ ոչ ընկալցի զարքայութիւն Աստուծոյ իբրեւ զմանուկ, ոչ մտցէ ի նա: Եւ առեալ զնոսա ի գիրկս՝ ձեռն եդ ի վերայ եւ օրհնեաց զնոսա: Եւ ընդ ելանելն նորա անտի ի ճանապարհ՝ ահաւասիկ ոմն մեծատուն ընթացեալ ի ծունր իջանէր, հարցանէր զնա՝ եւ ասէր. վարդապետ բարի, զի՞նչ արարից զի

զկեանս յաւիտենականս ժառանգեցից: Եւ Յիսուս ասէ ցնա. զի՞ ասես զիս բարի. չիք ոք բարի՝ բայց մի Աստուած. զպատուիրանս գիտես. մի՛ շնար, մի՛ սպանաներ, մի՛ գողանար, մի սուտ վկայեր, պատուեա զհայր քո եւ զմայր: Նա պատասխանի ետ եւ ասէ ցնա. վարդապետ, զայդ ամենայն արարի ի մանկութենէ իմմէ, արդ զի՞նչ եւս պակաս իցեմ: Եւ Յիսուս հայեցեալ ի նա՝ սիրեաց զնա եւ ասէ ցնա. մի ինչ պակաս է ի քէն. եթէ կամիս կատարեալ լինել, երթ զոր ինչ ունիս վաճառեա եւ տուր աղքատաց. եւ ունիցիս գանձս յերկինս, եւ առ զխաչն եւ եկ զկնի իմ: Եւ նա խոժոռեալ ընդ բանն՝ գնաց տրտում, զի ունէր ինչս բազումս: Եւ հայեցեալ յայս կոյս՝ յայն կոյս Յիսուս, ասէ ցաշակերտսն. զիա՜րդ դժուարին է՝ որ զինչսդ ունին, մտանել յարքայութիւն Աստուծոյ: Եւ աշակերտքն զարմացեալ էին ի վերայ բանիցն նորա. իսկ Յիսուս դարձեալ պատասխանի ետ նոցա եւ ասէ. որդեակք, ո՜րչափ դժուարին է յուսացելոց յինչս՝ մտանել յարքայութիւն Աստուծոյ. դիւրին է մալխոյ ընդ ծակ ասղան անցանել, քան մեծատան յարքայութիւն Աստուծոյ մտանել: Եւ նոքա առաւել եւս զարմանային՝ եւ ասէին ընդ միմեանս. իսկ ո՞վ կարասցէ ապրել: Հայեցեալ ընդ նոսա Յիսուս՝ ասէ. առ ի մարդկանէ այդ անհնարին է, այլ ոչ առ ի յԱստուծոյ: 27:

Քարոզ. Խնդրեսցուք: Կեցո: Աղօթ. Թագաւոր:

---

## Զ · ՈՒՐԲԱԹ · ԱԶ

### ՅԱՌԱՒՕՏՈՒ

### ՀԱՐՑ ԴԶ

Ծագումըն միածնի Որդւոյ քո յերկնից. անըսկիզբն անեղ մարմնացաւ ի սըրբոյ կուսէն տընօրինաբար.
|| օրհնեալ Տէր Աստուած հարցըն մերոց: Որ վարըն յանցանացն Ադամայ նախաստեղծին. ի վերայ խաչին զինուորըն գեղարդեամբըն բանայր ըզկողահոս աղբիւրն. օրհնեալ: Որ ըզմահ կոխեաց Քրիստոս Աստուած. եւ մեզ կենանըս պարգեւեաց հրաշալի յարութեամբն իւրով. օրհնեալ:

Գ. ԸզՏէր ։ Ամենայն գործք Տեառն ըզՏէր օրհնեցէք ։ Այսօր խոցեալն ի տիգողէն. համբերող մարմնովն քաղցրացոյց ըզձաշակացն ըզդառնութիւն ա ծ ։ Այսօր ամպ լուսոյ ոււն գործեալ ի հրալից վիմին. պահապանքն պակուցեալ ի հրակիզմանէ լուսոյն. ա ծ ։ Այսօր հրաձեւ փայլականացայտ. լոյսն անգղեաց ըզգաստիցն ի հրաշազարդ ըզյարութեանն ա ծ ։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԴԶ

Ծագումն հրաշալի որ անյայտ էր ի մէնջ ։ 251 ։

ՈՂՈՐՄԵԱ ԴԶ

Ընդ քեզ աղաչեմք ողորմեած մարդասէր ։ Որ էիր էական փառակից ընդ Հօր եւ արարչակից Հոգւոյն. խոնարհեալ ի մերըս վեր առեր մարմին. ընդ քեզ աղա ։ Որ զվնդղուեան սուր դառնութեամբ լեղւոյն քաղցրացուցեր ըզձաշակ. դաւանեալ ըզքեզ Տէր առաւագակին. եւ մեք աղա ։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԴԶ

Փառաւորեալ անճառելի յարութիւնըն Քրիստոսի ։ Որ կամաւ Հօր և Հոգւոյն ի վերայ քառաթեւին պատարագեալ զառն Աստուծոյ. փառաւորեալ ։ Քրիստոսանման թագաւորն հետազօտեալ ի դըժոխս. կապեաց զիշխանըն մեղաւոր զմահու գերեալըն յԱդամայ կենագործեաց ի կեանս անման. փառաւորեալ ։

ՍԱՂ. ԽԶ. Կ8. Համբարձաւ ։ ՓԽ. Ծափս հարէք ։ 711 ։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու ։ ԺԸ. 15 ։

Առ Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Մատուցանէին (առ նա) և մանկտի՝ զի մերձենայցէ ի նոսա. իբրև տեսին աշակերտքն՝ սաստէին նոցա ։ Իսկ Յիսուս կոչեցեալ զնոսա առ ինքն՝ ասէ. Թոյլ տուք մանկտւոյդ գալ առ իս, և մի արգելուք զդոսա. զի այդ-

Digitized by Google

պիսեացդ է արքայութիւն Աստուծոյ։ Ամէն ասեմ ձեզ, որ ոչ ընդունիցի զարքայութիւն Աստուծոյ իբրև զմանուկ, ոչ մտցէ ի նա։ Եւ եհարց զնա ոմն իշխան և ասէ. վարդապետ բարի, զի՞նչ գործեցից՝ զի զկեանսն յաւիտենականս ժառանգեցից։ Ասէ ցնա Յիսուս. զի՞ ասես զիս բարի. չիք ոք բարի, բայց մի Աստուած։ Զպատուիրանս գիտես. մի՛ շնար, մի՛ սպանաներ, մի՛ գողանար, մի՛ սուտ վկայեր, պատուեա զհայր քո և զմայր։ Եւ նա ասէ. զայդ ամենայն պահեցի ի մանկութենէ իմմէ։ Իբրև լուաւ զայն Յիսուս, ասէ ցնա. միւս ևս պակաս է քեզ. զամենայն ինչ զոր ունիս վաճառեա և տուր աղքատաց, և ունիցիս գանձս յերկինս, և եկ զկնի իմ։ Նա իբրև լուաւ զայս, տրտմեցաւ. քանզի էր մեծատուն յոյժ։ Իբրև ետես զնա Յիսուս տրտմեալ, ասէ. ո՛րպէս դժուարաւ որ ինչս ունիցին՝ մտանիցեն յարքայութիւն Աստուծոյ։ Դիւրագոյն իցէ մալխոյ ընդ ծակ ասղան անցանել, քան մեծատան յարքայութիւն Աստուծոյ մտանել։ Եւ որ լուանն՝ ասէին. և ո՞ կարիցէ ապրել։ Եւ նա ասէ. անհնարինք առ ի մարդկանէ՝ հնարաւորք են յԱստուծոյ։ Եւ ասէ Պետրոս. ահաւասիկ մեք թողաք զամենայն ինչ զմեր, և եկաք զկնի քո։ Եւ նա ասէ ցնոսա. ամէն ասեմ ձեզ, եթէ ոչ ոք է՝ որ եթող զտուն, կամ զծնօղս, կամ զեղբարս, կամ զկին, կամ զորդիս՝ վասն արքայութեան Աստուծոյ, եթէ ոչ առնուցու բազմապատիկ ի ժամանակի յայսմիկ. և յաշխարհին որ գալոցն է՝ զկեանսն յաւիտենականս ժառանգեսցէ։ Եւ առեալ զերկոտասանսն առանձինն՝ ասէ ցնոսա. ահաւասիկ ելանեմք յԵրուսաղէմ, և կատարեսցին ամենայն գրեալքն մարգարէիւք վասն որդւոյ մարդոյ. զի մատնեսցի հեթանոսաց և կատակեսցի, և հարկանիցեն և սպանանիցեն զնա, և յերիր աւուր յարիցէ։ Եւ նոքա ոչ ինչ իմացան յայնցանէ, այլ էր բանն ծածկեալ ի նոցանէ, և ոչ գիտէին զասացեալսն։ 34։

Քարոզ. Խնդրեսցուք։ Կեցո։ Աղօթ. Քում ամենազօր։

---

## Յ Ե Ր Ե Կ Ո Յ Ի Ն

ՍԱՂ. ԽԶ. կՑ. Համբարձաւ։ Փխ. Ծափս հարէք։ 711։



Digitized by Google

## Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի։ ԺԹ. 16։

### Առ Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ ահա մատուցեալ ոմն (առ Նա) ասէ. վարդապետ բարի, զի՞նչ բարի գործեցից՝ զի ընդունիցիմ զկեանսն յաւիտենականս։ Եւ Նա ասէ ցնա. զի՞ հարցանես զինէ զբարւոյ, մի է բարի. եթէ կամիս ի կեանսն յաւիտենականս մտանել, պահեա զպատուիրանսն։ Ասէ ցնա. զո՞րս։ Ասէ ցնա Յիսուս. զմի՛ սպանաներն և մի՛ շնար, և մի՛ գողանար, և մի՛ սուտ վկայեր, պատուեա զհայր քո և զմայր. և սիրեսցես զընկեր քո իբրև զանձն քո։ Ասէ ցնա պատանին. զայդ ամենայն պահեցի ի մանկութենէ իմմէ. արդ ի՞ւ իւիք պակաս իցեմ։ Ասէ ցնա Յիսուս. եթէ կամիս կատարեալ լինել, երթ վաճառեա զինչս քո և տուր աղքատաց. և ունիցիս գանձս յերկինս, և եկ զկնի իմ։ Իբրև լուաւ պատանին զբանն, գնաց տրտմեալ, զի ունէր ստացուածս բազումս։ Ասէ Յիսուս ցաշակերտսն. ամէն ասեմ ձեզ, զի դժուարաւ մտցէ մեծատունն յարքայութիւն երկնից։ Դարձեալ ասեմ ձեզ, դիւրին է մալխոյ մտանել ընդ ծակ ասղան, քան մեծատան յարքայութիւն Աստուծոյ մտանել։ Իբրև լուան աշակերտքն՝ զարմացան յոյժ, և ասեն. իսկ ո՞ կարիցէ ապրել։ Հայեցաւ ի նոսա Յիսուս և ասէ. առ ի մարդկանէ այդ անկար է, այլ առ յԱստուծոյ ամենայն ինչ զօրաւոր։ Յայնժամ պատասխանի ետ Պետրոս և ասէ ցնա. ահաւասիկ մեք թողաք զամենայն և եկաք զկնի քո, արդ զի՞նչ լինիցի մեզ։ Ասէ ցնոսա Յիսուս. ամէն ասեմ ձեզ. զի դուք որ եկիք զկնի իմ, ի միւսանգամ գալստեանն՝ յորժամ նստցի որդի մարդոյ յաթոռ փառաց իւրոց, նըստջիք և դուք յերկոտասան աթոռ՝ դատել զերկոտասան ազգն Իսրայելի։ Եւ ամենայն որ ոք եթող զտուն կամ զեղբարս կամ զքորս կամ զհայր կամ զմայր կամ զկին կամ զորդիս կամ զագարակս վասն անուան իմոյ, հարիւրապատիկ առցէ՝ և զկեանսն յաւիտենականս ժառանգեսցէ։ Բազումք եղիցին առաջինք յետինք, և յետինք առաջինք։ Քանզի նման է արքայութիւն երկնից առն տանուտեառն, որ ել ընդ առաւօտս ի վարձու ունել մշակս յայգի իւր. և արկ վարձս մշակացն աւուրն դահեկան, և առաքեաց զնոսա յայգի իւր։ Եւ ելեալ զեր-

Digitized by Google

րորդ ժամու՝ ետես այլս զի կային դատարկք ի հրապարակս, ասէ և ցնոսա. երթայք և դուք յայգի իմ, և որ ինչ արժան իցէ՝ տաց ձեզ. գնացին և նոքա: Եւ դարձեալ ելեալ զվեց ժամու, և զինն ժամու՝ արար նոյնպէս: Եւ զմետասաներորդ ժամու ելեալ, եգիտ այլս՝ զի կային դատարկ, ասէ ցնոսա. ընդէ՞ր կայք աստ զօրս ցերեկ դատարկ: Ասեն ցնա. զի ոչ ոք կալաւ զմեզ ի վարձու. ասէ ցնոսա. երթայք և դուք յայգին, և որ ինչ արժան է՝ առնուցուք: Եւ իբրև երեկոյ եղև՝ ասէ տէր այգւոյն ցգաւառապետ իւր. կոչեա զմշակսն՝ և տուր նոցա վարձս, սկսեալ ի յետնոցն մինչև ցառաջինսն: Իբրև եկին որք զմետասաներորդ ժամուն, առին մէն մի դահեկան. եկեալ և առաջինքն՝ համարէին թէ աւելի առնուցուն. և առին մէն մի դահեկան և նոքա: Իբրև առին՝ տրտնջէին զտանուտեառնէն և ասէին. թէ դոքա յետինքդ մի ժամ գործեցին, և հաւասարակորդս մեզ արարեր զդոսա, որ զծանրութիւն աւուրն բարձաք և զտօթ: Նա պատասխանի ետ միում ի նոցանէ և ասէ. ընկեր, չզրկեմ զքեզ. ո՞չ դահեկանի միոջ սակ արկեր ընդ իս. ա՛ռ զքոյդ և երթ. եթէ կամիմ յետնոցս տալ որպէս և քեզ, եթէ չիցէ՞ ինձ իշխանութիւն յիմս առնել զինչ և կամիմ, կամ թէ ակն քո չա՞ր է՝ զի ես առատ եմ: Այսպէս եղիցին յետինք առաջինք, և առաջինք յետինք. զի բազումք են կոչեցեալք՝ և սակաւք են ընտրեալք: Ի. 16:

ՀԱՄԲԱՐՁԻ ԴՋ

Որք տնկակից եղաք նմանութեան մահու: 718:

Համբարձաւ Տէրն մեր Քրիստոս: Երեք փոխ. 707:

ՍԱՂ. ԽԳ. կՑ. Համբարձէք: փխ. Տեառն է: 715:

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մարկոսի: Ժ. 28:

Առ Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Սկսաւ ասել (ցնա) Պետրոս. ահաւասիկ մեք թողաք զամենայն, և եկաք զկնի քո: Պատասխանի ետ Յիսուս և ասէ. ամէն ասեմ ձեզ, ոչ ոք է որ եթող զտուն, կամ զեղբարս, կամ զքորս, կամ զհայր, կամ զմայր, կամ զորդիս, կամ զագարակս՝ վասն իմ կամ վասն աւետարանին, եթէ ոչ առնուցու հարիւրապատիկ այժմ յայսմ

Digitized by Google

ժամանակի տունս և եղբարս և քորս և մարս և որդիս և ագարակս հալածանօք հանդերձ, և յաշխարհին որ գալոց է՝ զկեանսն յաւիտենականս։ Զի բազումք եղիցին առաջինք՝ յետինք, և յետինք՝ առաջինք։ Եւ էին ի ճանապարհի մինչդեռ ելանէին յԵրուսաղէմ. և երթայր Յիսուս առաջի քան զնոսա, և զարմացեալ էին որ զհետն երթային, և երկնչէին ։ 32 ։

Քարոզ. Խնդրեսցուք ։ Կեցո ։ Աղօթ. Թագաւոր ։

---

# Զ · ՇԱԲԱԹ · ԱԿ

## ՅԱՐՈՒԱՒՕՏՈՒ

### ՀԱՐՑ ԴԶ

Փառաւորեալ զանուն քո սուրբ ‖ Աստուած հարցըն մերոց ։ Որ յանըսկըզբնական ի Հօրէ առաքեցար. եւ առեր մարմին ի սըրբոյ կուսէն Աստուած ։ Որ չարչարեցար մարմնով վասըն մեր. եւ բարձեր ըզմեղըս մեր ի խաչափայտն Աստուած ։

Գ. Ըզտէր օրհնեցէք ‖ բարձր արարէք ըզնա յաւիտեան ։ Որ ի խաչին բեւեռելով Քրիստոս ըզմահ կոխեաց. եւ ըզնախաստեղծն ի ծառայութենէ մահու ազատեցոյց բարձր ։ Որ ի գերեզմանի եղաւ որպէս մարդ. եւ ի հրեշտակաց մըշտընջենաւորակից Հօր քարոզեցաւ բարձր ։ Որ սոսկալի հիացմամբ ըզպահապանսըն զարհուրեցոյց. եւ ըզտըրտմութիւն իւղաբերիցըն փարատեցոյց բարձր ։

### ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԴԶ

Աստուածածին զերագոյն երկնից ցուցար խորան եւ առագաստ. քանզի ծագեալ լոյսն ի Հօրէ բնութեանց էից աննմանելին պարագրեցաւ ի քում յորովայնի. ‖ Հոգեւոր երգով ըզքեզ ըմիշտ մեծացուցանեմք ։ Դուռըն փակեալ զքեզ Եզեկիէլ յառաջագոյն ծանոյց կոյս անարատ. ընդ որ եմուտ անտեսն յէից.

Digitized by Google

Բանն անմարմին որ ի Հօրէ եւ եղ մարմնով անխառնե-
լի միաւորով կուսութեանդ. հոգեւոր: Վերափոխեալ ըզ-
քեզ ի յերկնային խորանսն այսօր Որդին քո միածին.
ժուստր եւ դասք առաքելոցն եւ իմաստուն սուրբ կու-
սանացըն միաձայնելով գովէին ըզքեզ մայր անհարս-
նացեալ. հոգեւոր:

ՈՂՈՐՄԵԱ ԴՁ

Անժամանակ Աստուած անըսկիզբն եւ անճա-
ռելի. անտես ես սրովբէից. որ միշտ ընդ Հօր օրհը-
նաբանիս. ի յանըմանց հրէից. գգաստացեալ օր-
հնաբանիչք եղեաք. || Որդի Աստուածոյ ողորմեա:
Որ առաքեցեր ի Հօրէ և մարմնացար անճառապէս.
եւ սուրբ եւ կուսէն. հաճեցար ըզըմաց խաչի-
չին. ի յանձըն ամենայն փոխանակ դատապարտու-
թեան ըն նախաստեղծին. Որդի: Որ բժշկեցեր
ի խաչին յաղագս մերոյ յանցանաց. փըրկիչ բոլո-
րից. ահաւոր գործըմամբ ձայնիւ. զարարածըս
դողացուցեր. եւ ըզլուսաւորսըն խաւարեցուցեր.
Որդի: Որ ընդ մեռեալըս համարելով զթաղումն ըն-
կալար. բովանդակելոյ մարմնով. յարուցեալ յերը-
րորդ յաւուր. հրեշտակացն աւետարանութե-
թեամբ. քարոզեցար յաշակերտեալ կանանցն. Որդի:

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԴՁ

Զանճառելի յարութիւնըն հրաշացեալ հրեշտակըն
գուշէր առ կանայսն ասելով. յարուցեալ է Տէրն ի
գերեզմանէն: Որ էակից ես ընդ Հօր զանհնաւոր յա-
րութիւն քո ի գերեզմանէն. ստըրբասանեալ կանայքըն
խընդութեամբ քարոզէին: Ցարեաւ Տէրն ի մեռե-
լոց. եւ ըզզօրութիւնըս դըժոխոց խորտակեաց եւ զարգե-
լեալսն ի նմա կորզեաց ըսքանչելի յարութեամբ իւրով:

Digitized by Google

ՍԱՂ. ԽԶ. ԿՑ. Համբարձաւ։ Փխ. Ծափս։ 711։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու։ ԺԸ. 35.

Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի

Եւ եղեւ ի մօտելն (Նորա) յԵրիքով՝ կոյր ոմն նստէր առ ճանապարհաւն մուրացիկ։ Իբրեւ լուաւ զանցանել ժողովրդեանն, հարցանէր՝ թէ զի՞նչ իցէ այն։ Եւ պատմեցին նմա, թէ Յիսուս Նազովրեցի անցանէ։ Աղաղակեաց եւ ասէ. Յիսուս որդի Դաւթի, ողորմեաց ինձ։ Եւ որ առաջին երթային՝ սաստէին նմա զի լռեսցէ. եւ նա եւս առաւել աղաղակէր. որդի Դաւթի, ողորմեաց ինձ։ Զտեղի առ Յիսուս, եւ հրամայեաց ածել զնա առ իւր. եւ իբրեւ մերձ եղեւ առ նա, եհարց զնա եւ ասէ. զի՞նչ կամիս դու՝ զի արարից քեզ։ Եւ նա ասէ. Տէր, զի բացցին աչք իմ եւ տեսից։ Եւ Յիսուս ասէ ցնա. հայեաց, հաւատք քո կեցուցին զքեզ։ Եւ առժամայն ետես, եւ երթայր զհետ Նորա եւ փառաւոր առնէր զԱստուած. եւ ամենայն ժողովրդեանն տեսեալ՝ տային օրհնութիւն Աստուծոյ։ Եւ մտեալ շրջէր ընդ Երիքով։ Եւ ահա այր մի անուն կոչեցեալ Զակքէոս. եւ նա էր մաքսապետ, եւ ինքն մեծատուն։ Եւ խնդրէր տեսանել՝ թէ ո՞վ իցէ Յիսուս, եւ ոչ կարէր ի բազմութենէն, զի կարճ էր հասակաւ։ Եւ ընթացեալ յառաջ՝ ել ի ժանտաթզենին զի տեսանիցէ զնա. քանզի ընդ այն իսկ անցանելոց էր։ Իբրեւ եկն ի տեղին, հայեցաւ ի վեր Յիսուս՝ եւ ասէ ցնա. Զակքէ, փութա էջ այտի, զի այսօր ի տան քում արժան է ինձ ագանել։ Փութացաւ եւ էջ՝ եւ ընկալաւ զնա ուրախութեամբ։ Իբրեւ տեսին ամենեքին, տրտնջէին եւ ասէին՝ թէ առ առն մեղաւորի եմուտ լուծանել։ Եկն եկաց Զակքէոս եւ ասէ ցՏէր. Տէր ահա զկէս ընչից իմոց տաց աղքատաց. եւ եթէ զոք զրկեցի, հատուցից չորեքկին։ Եւ ասէ ցնա Յիսուս. այսօր եղեւ փրկութիւն տանս այսմիկ. քանզի եւ սա որդի Աբրահամու է։ Զի եկն որդի մարդոյ խնդրել եւ կեցուցանել զկորուսեալն։ Եւ մինչդեռ նոքա զայն լսէին, յաւել առակ մի եւ ասէ, վասն մերձենալոյ Նորա յԵրուսաղէմ, եւ համարելոյ նոցա թէ առժամայն յայտնելոց է արքայութիւն Աստուծոյ։ Ասէ. այր ոմն ազնուական գնաց յաշխարհ հեռի՝ առնուլ իւր թագաւորութիւն, եւ դառնալ։ Եւ կոչեցեալ զծառայս

Digitized by Google

իւր՝ ետ նոցա տասն մնաս, և ասէ ցնոսա. յարգեցէք զայդ՝ մինչև եկից։ Եւ քաղաքացիքն նորա ատէին զնա, առաքեցին հրեշտակս զկնի նորա՝ և ասեն, թէ ոչ կամիմք թագաւորել դմա ի վերայ մեր։ Եւ եղև դառնալ նմա՝ առեալ զթագաւորութիւնն. և կոչեալ զծառայսն՝ որոց տուեալ էր զարծաթն, զի գիտասցէ թէ ո՛ զինչ շահեցաւ։ Եկն առաջինն և ասէ. տէր, մնասն քո՝ տասն մնաս արար։ Եւ ասէ ցնա. ազնիւ ծառայ և բարի, զի ի փոքու հաւատարիմ եղեր, լիջիր իշխանութիւն ունել ի վերայ տասն քաղաքի։ Եկն երկրորդն և ասէ. մնասն քո արար հինգ մնաս։ Ասէ ցնա. և դու լիջիր ի վերայ հինգ քաղաքաց։ Եկն միւսն և ասէ. տէր, ահա մնասն քո զոր ունէի, ծրարեալ ի վարշամակի. երկնչէի ի քէն, զի այր ստամբակ ես. բառնաս՝ զոր ոչ եդիր, և հնձես՝ զոր ոչ սերմանեցեր։ Եւ ասէ ցնա. ի բերանոյ քումմէ դատեցայց զքեզ, ծառայ անհաւատ. գիտէիր թէ ես այր մի ստամբակ եմ, բառնամ՝ զոր ոչ եդի, և հնձեմ՝ ուր ոչ սերմանեցի։ Եւ ընդէ՞ր ոչ ետուր զարծաթն իմ ի սեղանաւորս, և եկեալ ես տոկոսեօք պահանջէի։ Եւ ասէ ցսպասաւորսն. առէք ի դմանէ զմնասն, և տարայք տուք այնմ՝ որ ունիցի զտասն մնասն։ Եւ ասեն ցնա. տէր, ունի տասն մնաս։ Ասեմ ձեզ. եթէ ամենայնի որ ունիցի՝ տացի. և յայնմանէ որ ոչն ունիցի՝ և զոր ունիցին բարձցի ի նմանէ։ Բայց զթշնամիսն իմ զայնոսիկ, որ ոչն կամէին զիս թագաւորել ի վերայ նոցա, ածէք այսր և սպանէք առաջի իմ։ Եւ իբրև զայս ասաց, գնաց յառաջ՝ ելանել յԵրուսաղէմ։ ԺԹ. 28։

Քարոզ. Խնդրեսցուք։ Կեցո։ Աղօթ. Քում ամենազօր։

---

ՑԵՐԵԿՈՑԻՆ

ՍԱՂ. ԽՁ. ԿՑ. Համբարձաւ։ Փխ. Ծափս։ 711։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի։ Ի. 17։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Իբրև ելանէր (Յիսուս) յԵրուսաղէմ, ա՛ռ զերկո։ 354։

ՄՆՍՆԴԻ Գուլափէան

Օրհնեալ որ գաս յանուն Տեառն, օրհնեալ որ գալոց ես։

Digitized by Google

Տէր Աստուած մեր երևեցաւ մեզ . արարէք տօնս ուրախութեան կանխաւ մինչև յանկիւնս սեղանոյ ։

ՀԱՄԲԱՐՁԻ ԴԶ

Թագաւոր գոլով քո յաշխարհ մտեր ի քաղաքն ։ 309 ։

ՍԱՂ · ԻԳ · ԿՑ · Համբարձէք ։ Փխ · Տեառն է ։ 715 ։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մարկոսի ։ Ժ · 32 ։

Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի

Եւ առեալ միւսանգամ զերկոտասանսն առանձինն՝ սկսաւ ասել նոցա զինչ անցք անցանելոց իցեն ընդ նա . թէ ահաւասիկ ելանեմք յԵրուսաղէմ, և որդի մարդոյ մատնեսցի քահանայապետիցն և դպրաց , և դատեսցին զնա ի մահ, և մատնեսցեն զնա հեթանոսաց, և կատակեսցեն զնովաւ , և հարկանիցեն զնա , և թքանիցեն ի նա , և սպանցեն, և յետ երից աւուր յարիցէ ։ Եւ երթային առ նովաւ Յակովբոս և Յովհաննէս՝ որդիքն Զեբեդեայ, և ասեն ցնա . վարդապետ , կամիմք զի զոր ինչ խնդրեսցուք ի քէն՝ արասցես մեզ ։ Եւ նա ասէ ցնոսա . զի՞նչ կամիք յինէն՝ զի արարից ձեզ ։ Եւ նոքա ասեն ցնա . տուր մեզ՝ զի նստցուք մի յաջմէ քումմէ և մի յահեկէ ի փառսն քում ։ Պատասխանի ետ Յիսուս և ասէ ցնոսա . ոչ գիտէք զինչ խնդրէք . կարէ՞ք ըմպել զբաժակն՝ զոր ես ըմպելոց եմ, կամ զմկրտութիւնն մկրտել՝ զոր ես մկրտելոցն եմ ։ Եւ նոքա ասեն ցնա . կարեմք ։ Եւ Յիսուս ասէ ցնոսա . զբաժակն զոր ես ըմպելոց եմ՝ ըմպիցէք, և զմկրտութիւնն՝ զոր ես մկրտելոց եմ՝ մկրտիցիք . այլ նստուցանել ընդ աջմէ իմմէ և ընդ ահեկէ՝ ոչ է իմ տալ , այլ որոց պատրաստեալ իցէ ։ Եւ լուեալ զայն տասանցն, սկսան բարկանալ Յակովբայ և Յովհաննու ։ Եւ Յիսուս կոչեաց զնոսա առ ինքն , և ասէ ցնոսա . գիտէք՝ զի որ յանուան իշխանքն են հեթանոսաց , տիրեն նոցա . և մեծամեծք նոցա իշխեն նոցա ։ Ոչ նոյնպէս իցէ և ի ձերում միջի . այլ որ կամիցի ի ձէնջ մեծ լինել , եղիցի ձեր պաշտօնեայ . և որ կամիցի ի ձէնջ առաջին լինել՝ եղիցի ամենեցուն ծառայ ։ Քանզի և որդի մարդոյ ոչ եկն առնուլ պաշտօն , այլ պաշտել , և տալ զանձն իւր փրկանս փոխանակ բազմաց ։ 45 .

Քարոզ · Խնդրեսցուք ։ Կեցո ։ Աղօթ · Թագաւոր ։

Digitized by Google

# Է· ԿԻՒՐԱԿԷ· ԲՋ

## ԵՐԿՐՈՐԴ ԾԱՂԿԱԶԱՐԴ Է

### Ի ԳԻՇԵՐԻ

ՀԵՏԵՒԱԿ ՇԱՐԱԿԱՆ ԴՋ

Համբարձաւ Տէրն մեր յերկինս ։ Երգ. փոխն ։ 706 ։

ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԴԿ

ՄԵԾԱՀՐԱՇ այս խորհուրդ. աւանդութեամբ առ մեզ հասեալ. զոր հոգւոյն լուսատուին ի պաշտպանէն իւրմէ լուեալ. եթէ տօն մեծ է այսօր իմոյ դասուն որ ի յերկինս ։ Քանզի ի յելսն վերին. երկնաւորին որ ի յերկրէ. ըստ դասուց երկնայնոցն տօնէին ուրախութեամբ. ի հրեշտակացն սկսեալ մինչ ի յաթոռսն կատարեալ ։ Իսկ ի չորրորդն դասէ. պաշտպան եղեալ լուսաւորչին. ի դասուն իւր փութացեալ ուրախութեամբ տօնակցութիւն. զոր հարցմամբ ի նմանէ տեղեկանայր մարմնով հրեշտակն ։ Եւ քանզի մեծ այս խորհուրդ. ի փրկութիւն բանաւորաց. հրեշտակաց եւ մարդկան առ հասարակ կատարեալ. երկոցունց սեռիցն ի միասին յարմարութիւն ։ Եւ զի չարժեալ նախանձու. երիցագոյն զաւակին. ի գիւտ մոլորեալ եւ կորուսեալ անառակին. հրամայէ Հայրն վերին ուրախանալ ի միասին ։ Վասն որոյ եւ մեք. հանդիսացեալ ընդ նոսին. երգեսցուք օրհնութիւն հասարակաց փրկողին. որ եբարձ զխռովութիւն եւ հաստատեաց զխաղաղութիւն ։

† Այսօր ցնծայ եկեղեցի. երկրաւորաց եւ երկնայնոց. քանզի մեկնեալն ի միմեանց ըստ նախահօրն յանցանաց. միաւորի վերստին արարչական խոնարհու-

թեամբն։ Այսօր զէակն համայնից. իմանալեաց և զգալեաց. որ և զմարդն ի պատկեր իւր ստեղծ զանկեալն ի պատրանաց. Օրհնեցէք որդիք մարդկան կանգնեալք երկրորդ արարչութեամբն։ Որ զհանդերձեալն խորհուրդ. Հոգւովն յայտնեաց տեսանողացն. Եւ եկեալ կատարեաց Հօր եւ Հոգւոյն առաքմամբ. օրհ։ Որ ի լռութեան բոլորի. տնօրինական մեծ խորհրդոյն. առնեցելովն առ ի մէնջ փառօք առ Հայր վերհամբարձաւ. օրհ։ Զոր տեսեալ Ամովսածնին. ի հիացման ընդվերինն. բարբառելով առ միմեանս եթէ այս ով եկեալ յերկրէ. կարմրացեալ հանդերձիւ ի տիգախոց բղխեալ կողէն։

Իշխանութիւնք երկնից զարհուրեցան տեսանելով զելս քո Քրիստոս. ընկեր առ ընկեր սարսեալ ասէին ով է սա թագաւոր փառաց։ Սա է մարմնացեալ Բանն Աստուած որ ի խաչին զմեղս ըսպան. եւ վերացաւ փառօք գայ յերկինս Տէր հզօր զօրութեամբ իւրով։ Սա է որ ի գերեզմանէն յարեաւ և աւերեաց զդժոխս. եւ վերհամբարձեալ փառօք գայ առ Հայր Տէր կարող ի պատերազմի։

Այսօր հրեշտակք ի յերկինս. ուրախանան ընդ մարդկան. որք իջեալ ի յերկնից տան աւետիս աշխարհի. ցնծացէք այսօր Քրիստոս յարեաւ ի մեռելոց։ Այսօր զուարթունն ի վիմին. խնկաբերից սուրբ կանանցն. փողէր ձայնիւ ցնծութեամբ պատմել աշակերտացն ասելով. ցնծացէք այսօր Քրիստոս։ Այսօր վիմին հաւատոյ. եւ Յովհաննու սիրելւոյ. ընդ հակառակս ընթացեալ ի գերեզման յարուցելոյն. զոր տեսեալ պատմէին Քրիստոս։ Այսօր եւ մեք զուարճացեալք. պայծառացուք տօնիւս. ընդ հաշտութեան

Աստուծոյ միմեանց արկցուք զերկրս սիրով. եւ միաբան գոչեսցուք Քրիստոս։

Հրեշտակացըն դասքն. յերկնից ի յերկիր վայրաբերեալ ի սպաս Որդւոյն Աստուծոյ։ Հրեշտակին ձայնիւ. ցընծայր կոյսըն սուրբ և ընթացեալ առ աշակերտսըն պատմէր։ Կենդանին յարեաւ. զերկունըս մահու եւ յոյծ և կեանըս պարգեւեաց աշխարհի։

Ցարուցեալ է Տէրն ի գերեզմանէն ահեղակերպ փայլմամբ. պատառեցան վէմք. եւ երկիր սասանեցաւ. ի յահէ զբարբառոյ մեծ կարապետին։ Էջ հրեշտակն ի յերկնից ի գերեզմանըն Տեառն. հընչեցուցանէր. ընձայն ահեղ գոչման փողոյն. ի վերայ գերեզմանին։ Իսկ եկեալ սուրբ կանանցն ի խնկել զմարմինըն Տեառն. եւ լըւեալ ի հրեշտակէն. եթէ յարեաւ ի մեռելոց կենդանին յաւիտենից։

Հգ. Ի համբառնալ Բանին յերկինս և ի նստել ընդ աջմէ Հօր. զուարճացեալ առաքելոցն երկրպագէին. || օրհնելով ըզՀայր զառաքող Հոգւոյն։ Համահաւաքեալ գունդըք սրբոցն ի վերնատունըն խորհրդոյ. համբարձմամբ աչաց սպասէին Հոգւոյն. օրհնելով։ Ցանկարծահաս հնչմամբ հեղեալ կենդանարար աղբիւր լուսոյ. անմահական կենաց լուսով զարդարեալ. որք օրհնէին ըզՀայր։

Հն. Որ ի Հօրէ առաքեցար մարդասէր կարող Փըրկիչ. եւ ըզմեղուցեալ ըզմարդըն բըժըշկեցեր. || ողորմեա Տէր հրաժարելոյս զոր հրաւիրեալ առ քեզ կոչեցեր։ Որ ի խաչին բեւեռեցար մարդասէր կարող Փըրկիչ. եւ ըզցօղ անմահական արեանըդ ցօղեցեր տիեզերաց. ողորմեա։ Որ ըզդըժոխս աւերեցեր և ըզգերեալըն

փըրկեցեր. եւ զարգելեալսըն վերածեր ի յոյս կենա-
ցըն յաւիտենից. ողորմեա Տէր հրաժարելոյս զոր հրա-
ւիրեալ առ քեզ կոչեցեր։

ԾՆ. Այսօր Բանն ի Հօրէ անմեկնելի եւ անճառելի
խորհրդով. ի ձեուըն կուսական որովայնին տնօ-
րինաբար յերկրի երեւեալ։ Մանուկ անժամանակ ի
Հօրէ անսերմն ի կուսէ. ի գիրկըս մօր գրգռեցաւ
այսօր արարիչն երկնի եւ երկրի։ Որ մաքրեացն ըզ-
Յորդանան և լուացն ըզմեղս աշխարհի. զոր օրհ-
նեն անդադար արարածք ամենայն. զէակիցն
Հօր եւ Հոգւոյն։

ԽՉ. Այսօր Նշան յաղթող երեւեալ ի յերկրի. պայ-
ծառացոյց ըզտիեզերս. զէն յաղթութեան եւ տուր
ըզխաչ քո Տէր. ‖ Ապրեցուցանել ըզմեզ ի պատրանաց
Թշնամւոյն։ Փայտ կենաց կանգնեալ ի մէջ տիեզե-
րաց. յոյս եւ ապաւէն ազգի մարդկան. սա պահեսցէ
ըզմեզ յամենայն վտանգից մերոց. Ապրեցուցանել։
— Փառք Հօր։ Յաղթող զօրութեամբ խաչի քո պահեա
ըզմեզ Քրիստոս Աստուած. որ տարածեցեր ըզձեռըս
քո ի նմա. եւ լուծեր ըզկնիք դատապարտութեան
յանցանաց մերոց. Ապրեցուցանել։

— Այժմ և միշտ։ Ուստի լուեալ ի Նմանէ զարմա-
նահրաշ պատասխանին. եթէ զգերեալ ազգ մարդկան
ի գերողէն արեամբ գնեցի. յորմէ օրհնութիւնք նը-
մա ի փըրկելոցս արեամբ նորա։

---

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԴԿ

Այսօր արարիչդ արարածոց. որ նորահրաշ արար-
չութեամբ զարդարեցեր զեկեղեցի. ‖ Ըզքեզ բարեբա-
նեմք Աստուած հարցըն մերոց։ Այսօր կենդանից

յաւիտենից. որ ըզմեզ աք մեռեալ բնութիւնս բարձրացուցեր փառօք յերկինս. ընդ քեզ։ Այսօր որ զտարագրեալքս ըստ յանցանացն. գերագոյն քան զառաջինն ընդ քեզ յաթոռ Հօր հանգուցեր. ընդ քեզ։

Գ. Ըզտէր ‖ օրհնեցէք եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան։ Ժողովուրդք հեթանոսաց որք ընդ հրեշտակըս բարձրացայք. որով զանճառ փառսն ընկալայք օրհնեցէք։ Քահանայք և պաշտօնեայք որք ընդ քրովբէսըն դասեցայք. ընդ նոսին համաձայնեալք որ դասեցոյցն օրհնեցէք։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԴԿ

Աստուածածին մայր լուսոյ. արեգականն արդար։ 710։

Գիշերի գոլորելոյ ——. Դասք լուսեղէն։

ՈՂՈՐՄԵԱ ԴԿ

Որ բանիւ Բանըդ Հօր. գոյացուցեր զիմանալիսդ. ի պաշտօն փառաց քոց եւ էակից փառակցացդ. ‖ ողորմեա մաղթանօք սոցա երկրորդ բանաւորացս։ Որ անճառ պարգեւօք. քեւ զառաջինսըն լընուս. եւ ի ձեռըն նոցա որ ի խոնարհ քան ըզնոսա. ողորմեա։ Որով եւ մեք վերջացեալքս. յամենառատ քո շնորհէ. ճոխանամըք նոքօք գեր ի վերոյ քան զարժանն. ողորմեա։ Վասն որոյ եւ մեք հանդիսացեալ ընդ նոսա. տօնեմք ցընծութեամբ զհասարակաց ըզփրկութիւն. վայելեալք յաննախանձ աստուածային քո պարգեւս։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԴԿ

Քահանայապետք առաջին. հանդիստ անախտ բընութեանն. բազմաչեայ քերովբէք եւ վեցթեւեան սերովբէք. բարեխօս լերուք առ Տէր հանդիսակից ձեր տօնողացս։ Տէրութիւնք վերին. եւ զօրութիւնք հըզօրին. իշխանութիւնք վեհագոյնք եւ քահանայապետք

երկրորդ. ‖ բարեխօս լերուք առ Տէր հանդիսակից ձեր տօնողացս։ Հրեշտակապետք երկնաւորք. եւ հրեշտակաց զինուորութիւնք. պետութիւնք բարձրացեալք ի քահանայապետութիւն երրորդ. բարեխօս։ Որք ի սկզբան փրկութեան. ի քոյ հովուին յայտնութիւնն. անբան հօտիցն հովուաց երգակցելով երգէին. ընդ նոսին համաձայնեալ երգեմք եւ մեք զփառս ի բարձունս։

Ջինջ Սուրբ Աստուածին Մող. փրկել։ Սոր. Վասն լսելի։ Քահ. Օրհնութիւն։ Եւ Եկանէն խաչն և տեսարանա և ամենայն ղուրգադ է դուրս, տեղով

ՇԱՐԱԿԱՆ ԴԶ

Թագաւոր զօրով քո յաշխարհ։ Երգէ տուն։ 309։

Ջինջ ՍԱՂՄՈՍ ՂԷ. Է Բն

Կ8. Լերինք ցնծասցեն առաջի Տեառն, զի գայ և հասեալ է Տէր ի դատել զերկիր։

Փխ. Օրհնեցէք զՏէր յօրհնութիւն նոր, զի սքանչ։ 315։

ԸՆԹերցուած յԵրգոց երգոյն Սողոմոնի։ Զ. 9։

Ո՞վ է սա որ երեւեալ է իբրեւ զառաւօտ, գեղեցիկ իբրեւ զլուսին, ընտիր իբրեւ զարեգակն, իբրեւ զհիացումն կարգեալ։ Մտի ի պարտէզ իմ քոյր իմ հարսն, կթեցի զմուռս հանդերձ խնկօք իմովք. կերայ զհաց իմ մեղու իմով. արբի զգինի իմ կաթամբ իմով։ Կերայք մերձաւորք իմ և արբէք. և արբեցարուք եղբօրորդիք իմ։ Ես ննջեմ և սիրտ իմ արթուն կայ։ Ո՞վ է սա որ ելանէ սպիտակացեալ. յեցեալ յեղբօրորդին իւր. ի ներքոյ խնծորոյն զարթուցի զքեզ. անդ երկնեաց զքեզ մայր քո. անդ երկնեաց որ ծնաւն զքեզ։ Եղբօրորդին իմ էջ ի պարտէզ իւր ի տաշտս խնկոց. հովուել ի բուրաստանս, և ժողովել շուշանս։ Ես եղբօրորդւոյ իմոյ՝ և եղբօրորդին իմ ինձ, որ հովուէն ի մէջ շուշանաց. մինչև տիւն լուսաւորեսցէ և ստուերքն շարժեսցին։ Ձայն եղբօրորդւոյ իմոյ առ դրանն։ Բաց ինձ քոյր իմ, մերձաւոր իմ, աղաւնի իմ, կատարեալ իմ. զի գլուխ իմ լցաւ ցօղով, և վարսք իմ ի շաղից գիշերոյ։ Դիր զիս

Digitized by Google

*իբրև զկնիք ի սրտի քում, իբրև զմատանի ի վերայ բազկի քո. զի հզօր է իբրև զմահ սէր: Ես պարիսպ և ստինք իմ իբրև զաշտարակս, ես էի յաչս Նորա՝ իբրև գտեալ խաղաղութիւն: Այգի եղև Սողոմոնի ի Բեելմաւոն. ետ զայգին իւր ցպահապանսն. բերցէ այր իւրաքանչիւր ընդ պտղոյ Նորա հազարս արծաթոյ: Այգի իմ ինձ առաջի իմ. հազարք Սողոմոնի, և երկերիւրք պահապանաց որ պահեն զպտուղ Նորա: Որ Նստիդ ի պարտէզս, այլք անսան քեզ. զձայն քո լսելի արա ինձ: Ը. 13:*

Ընթերցուած յեսայեայ մարգարէէ: ԿԳ. 1:

**Իսկ այս ո՞վ է որ դիմեալ գայ յԵդովմայ: 484:**

Պօղոսի առաքելոյն յեբրայեցւոց թղթոյն է
ընթերցուածս: Թ. 24:

*Զի ոչ եթէ ի ձեռագործ սրբութիւնս եմուտ Քրիստոս՝ յօրինակս ճշմարտութեանն, այլ ի բուն իսկ յերկինս՝ յանդիման լինել երեսացն Աստուծոյ վասն մեր: Ոչ զի բազում անգամ մատուցանիցէ զանձն պատարագ՝ որպէս քահանայապետն որ մտանէր ի սրբութիւն սրբութեանցն ամի ամի արեամբ օտարաւ. ապա թէ ոչ՝ պարտ էր Նմա բազում անգամ չարչարել ի սկզբանէ աշխարհի. բայց արդ աւասիկ մի անգամ ի կատարած յաւիտեանց յանարգութիւն մեղաց իւրով պատարագաւն յայտնեալ է: Եւ զոր օրինակ կայ մնայ մարդկան մի անգամ մեռանել, և յետ այնորիկ դատաստան, Նոյնպէս և Քրիստոս մի անգամ մատուցեալ պատարագ առ ի բառնալոյ զմեղս բազմաց. իսկ յերկրորդումն առանց մեղաց յայտնեսցի այնոցիկ՝ որ ակն ունիցին Նմա հաւատովք ի փրկութիւն: 28:*

Ձայնէ– Ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա:

**Օրհնեալ որ գաս յանուն Տեառն, օրհնեալ որ գալոց ես:**

**Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու: ԺԹ. 29:**

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

**Եւ եղև իբրև մերձեցաւ ի Բեթփագէ և: 320:**

Սրկ. Ժողովուրդ. Եւ ևս խաղաղութեան. Վասն ի վերուստ:

Digitized by Google

Եւ տեառնագրեն զանդաստանն, և զչորս կողմն աշխարհի :

Ձայն Քարոզ. Սուրբ խաչիւս : Աշխ. Պահպանեա :

Ի դառնալն յեկեղեցին սկսանին զՆորաստեղծեալն :

Քարոզ. Խնդրեսցուք : Կեցո : Աշխ. Քում ամենազօր :

---

## ՅԵՐԵԿՈՑԻՆ

ՍԱՂ. ԽԶ. ԿՑ. Համբարձաւ : Փխ. Ծափս : 711 :

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի : Ի. 29 :

Տերամբ մերով Յիսուսիւ Քրիստոսիւ

Եւ յելանելն նոցա յԵրիքովէ՝ գնացին զհետ նորա ժողովուրդք բազումք : Եւ ահա կոյրք երկու նստէին առ ճանապարհաւն. իբրև լուան թէ Յիսուս անցանէ՝ աղաղակեցին և ասեն. ողորմեաց մեզ, Յիսուս որդի Դաւթի : Եւ ամբոխն սաստեաց նոցա՝ զի լռեսցեն. և նոքա ևս առաւել աղաղակէին և ասէին. Տէր, ողորմեաց մեզ, որդի Դաւթի : Զտեղի ա՛ռ Յիսուս, կոչեաց զնոսա և ասէ. զի՞նչ կամիք զի արարից ձեզ : Ասեն ցնա. Տէր, զի բացցին աչք մեր : Եւ գթացեալ Յիսուս մերձեցաւ յաչս նոցա, և վաղվաղակի տեսին և գնացին զհետ նորա : Իբրև մօտ եղեն յԵրուսաղէմ, և եկին ի Բեթփագէ մերձ ի լեառն Ձիթենեաց, յայնժամ Յիսուս արձակեաց երկուս յաշակերտացն իւրոց, և ասէ ցնոսա. երթայք ի գեօղդ՝ որ առաջի ձեր է, և անդէն գտանիցէք էշ կապեալ և յաւանակ ընդ նմին, լուծէք ածէք ինձ : Եւ եթէ ոք ասիցէ ինչ ձեզ, ասասջիք, եթէ տեառն իւրեանց պիտոյ են. և վաղվաղակի առաքեսցէ զնոսա : Բայց այս ամենայն եղև, զի լցցի բան մարգարէին՝ որ ասէ. Ասացէք դստեր Սիովնի. ահա թագաւոր քո գայ քեզ հեզ և հեծեալ յէշ և ի յաւանակի իշոյ : Գնացին աշակերտքն. և արարին որպէս հրամայեաց նոցա Յիսուս. և ածին զէշն և զյաւանակն, և արկին զնոքօք ձորձս, և նստաւ ի վերայ նոցա : Եւ բազում ժողովուրդք տարածեցին ըզհանդերձս իւրեանց ի ճանապարհին, և այլք հատանէին ոստս ի ծառոց և տարածանէին ի ճանապարհին : Եւ ժողովուրդքն որ առաջին և զկնի երթային՝ աղաղակէին և ասէին. օրհնութիւն որդւոյ Դաւթի, օրհնեալ որ գայ յանուն Տեառն. օրհնութիւն ի բարձունս : Եւ ի մտանելն

Նորա յԵրուսաղէմ՝ դղրդեցաւ քաղաքն ամենայն, և ասէ՝ ո՞վ իցէ սա: Եւ ժողովուրդքն ասեն. սա է մարգարէն Յիսուս՝ որ ի Նազարեթէ Գալիլեացւոց: Եւ եմուտ Յիսուս ի տաճարն, և եհան արտաքս զամենեսին, որ վաճառէինն և գնէին ի տաճարի անդ. և զսեղանս հատավաճառացն կործանեաց և զաթոռս աղաւնեվաճառացն: Եւ ասէ ցնոսա. գրեալ է, տուն իմ տուն աղօթից կոչեսցի. և դուք արարէք զդա այրս աւազակաց: Եւ մատեան առ նա կոյրք և կաղք ի տաճարին, և բժշկեաց զնոսա: Իբրև տեսին քահանայապետքն և դպիրք զսքանչելիսն զոր արար, և զմանկտին որ աղաղակէին ի տաճարին և ասէին՝ օրհնութիւն որդւոյ Դաւթի, բարկացան և ասեն ցնա. լսե՞ս զինչ ասեն դոքա: Ասէ ցնոսա Յիսուս. այո. չիցէ՞ ընթերցեալ ձեր՝ եթէ ի բերանոյ տղայոց և ստնդիեցաց կատարեցեր զօրհնութիւն: Եւ թողեալ զնոսա՝ ել արտաքոյ քաղաքին ի Բեթանիա, և անդ ագաւ: ԻԱ. 17:

ՀԱՄԲԱՐՁԻ ԴՁ

Ի յարութեան յաւուր գալստեան: Երգ+ տօն: 310:

Համբարձաւ Տէրն մեր յերկինս: Երգ+ տօն: 706:

ՍԱՂ. ԻԳ. ԿՑ. Համբարձէք: Փխ. Տեառն է: 715:

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մարկոսի: Ժ. 46:

Վասն գալստեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի:

Եւ գան յԵրիքով. և ընդ ելանելն Նորա յԵրի: 317:

Քարոզ. Խնդրեսցուք: Կեցո: Աղօթ+. Թագաւոր:

---

# Է. ԵՐԿՈՒՇԱԲԱԹԻ. ԲԿ

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԴԿ

Որ զամենազօր զօրութիւնըդ քո ցուցեր ի Բաբելոնի. փրկելով զերիս մանկունսն ի հնոցին || ընդ քեզ օրհնեմք Աստուած հարցըն մերոց: Որ ըզբազմազեղ ներողութիւնըդ քո ցուցեր. զօրաց երկնաւորաց տարածելով զբազուկըս քո ի խաչին. ընդ քեզ: Որ ըղ-



Digitized by Google

բազմագութ ողորմութիւնդ քո ցուցեր. որ ազգս մարդկան. թաղելով ի սիրտ երկրի զի զմահու բարձցես զերկիւղ ըզքեզ օրհնեմք Աստուածահայրցն մերոց:

Գ. Ըզ Տէր օրհնեցէք || բարձր արարէք ըզնա յաւիտեանս: Բանն անեղական խոնարհեալ ի հողեղէն գոյացութիւնս. համբերեալ չարչարանաց զմահ խաչի ի յանձն էառ բարձր: Եւ իջեալ ի գերեզմանն անապական և սուրբ մարմնով. յարուցեալ յերրորդ աւուր լոյս ծագեաց տիեզերաց. բարձր: Իսկ հրեշտակապետն իջեալ ի գերեզմանն կենսատուին. աւետէր առ սուրբ կանայս Տէր յարեաւ ի մեռելոց բարձր:

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԴԿ

Աստուածածին մայր և կոյս. ծագող արեգա: 281:

ՈՂՈՐՄԵԱ ԴԿ

Յարեար երեւեցար առաքելոցն. եւ մեզ փրկիչ ողորմեա: Քեզ Քրիստոսի թագաւորիդ անմահի. երկրպագանեմք և զյարութիւնդ քո փառաւորեմք: Փառք փրկողիդ եւ Միածնիդ անմահի. փրկեա զժողովուրդս քո զոր ըստացար պատուական արեամբ քո սրբոյ:

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԴԿ

Յորժամ եկին ի գերեզմանն. իւղաբեր կանայքն եւ բերին ըզխունկսն ի խնկել. զանապական մարմինն: Յայնժամ հրեշտակն աւետարանէր. յարեաւ Քրիստոս պատմեցէք աշակերտացն զյարութիւնն Տեառն: Իսկ նոցա զարհուրեալ վասն ահագին տեսլեանն. պատմէին աշակերտացն զահագին տեսիլն:

ՍԱՂ. ԽԶ. 48. Համբարձաւ: փխ. Ծափս հարէք: 711:

Սրբոյ Աւետարանին որ ըստ Ղուկասու: Ի. 1:

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ եղև ի միում աւուրցն յայնցանէ, մինչդեռ ուսու-

Digitized by Google

ցանէր զժողովուրդն ի տաճարի անդ և աւետարանէր, հասին ի վերայ քահանայապետքն և դպիրք ծերովքն հանդերձ, և ասեն ցնա. ասա մեզ՝ որո՞վ իշխանութեամբ գործես դու զայդ, կամ ո՞վ է որ ետ քեզ զայդ իշխանութիւն: Պատասխանի ետ և ասէ ցնոսա. հարցից և ես զձեզ բան մի, և ասացէք ինձ. մկրտութիւնն Յովհաննու յերկնի՞ց էր՝ եթէ ի մարդկանէ: Եւ նոքա խորհեցան ի միտս իւրեանց և ասեն. եթէ ասեմք յերկնից, ասէ՝ իսկ ընդէ՞ր ոչ հաւատացէք նմա. և եթէ ասեմք ի մարդկանէ, ամենայն ժողովուրդն քարկոծ առնեն զմեզ. զի հաստատեալ է ի միտս զՅովհաննէ թէ մարգարէ է: Եւ պատասխանի ետուն՝ չգիտել թէ ուստի իցէ: Եւ Յիսուս ասէ ցնոսա. և ոչ ես ասեմ ձեզ, որով իշխանութեամբ առնեմ զայս: Յ:

Քարոզ. Խնդրեսցուք: Կեցո: Աշխ. Քում ամենազօր:

---

Յ Ե Ր Ե Կ Ո Յ Ի Ն

ՍԱՂ. ԽԶ. ԿՅ. Համբարձաւ: Փխ. Ծափս: 711:

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի: ԻԱ. 18:

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ այգուցն իբրև դարձաւ անդրէն ի քաղաքն՝ քաղցեաւ, և տեսեալ թզենի մի ի վերայ ճանապարհին, եկն ի նա, և ոչ ինչ եգիտ ի նմա՝ բայց միայն տերև: Եւ ասէ ցնա. մի այսուհետև ի քէն պտուղ եղիցի յաւիտեան: Եւ առժամայն չորացաւ թզենին: Իբրև տեսին աշակերտքն՝ զարմացան և ասեն, թէ զիա՞րդ վաղվաղակի ցամաքեցաւ թզենին: Պատասխանի ետ Յիսուս և ասէ ցնոսա. ամէն ասեմ ձեզ, եթէ ունիցիք հաւատս և ոչ երկմտիցէք, ոչ միայն թզենւոյդ առնիցէք, այլ թէպէտ և լերինդ ասիցէք՝ բարձիր և անկիր ի ծով, եղիցի: Եւ զամենայն ինչ զոր և խնդրիցէք յաղօթս հաւատովք՝ առնուցուք: Եւ իբրև եկն ի տաճարն, մատեան առ նա՝ մինչդեռ ուսուցանէր՝ քահանայապետքն և ծերք ժողովրդեանն և ասեն. որո՞վ իշխանութեամբ առնես զայդ, և ո՞վ ետ քեզ զիշխանութիւնդ զայդ: Պատասխանի ետ Յիսուս և ասէ ցնոսա. հարցից և ես զձեզ բան մի. զոր թէ ասիցէք ինձ, և ես ձեզ ասացից՝ որով իշխանութեամբ առնեմ զայս: Մկրտութիւնն Յովհաննու

Digitized by Google

ուստի՞ էր, յերկնի՞ց թէ ի մարդկանէ։ Եւ նոքա խորհէին ընդ միմեանս և ասէին. եթէ ասեմք՝ յերկնից, ասէ ցմեզ. իսկ ընդէ՞ր ոչ հաւատացէք նմա. և եթէ ասեմք՝ ի մարդկանէ, երկնչիմք ի ժողովրդենէն. զի ամենեքին զՅովհաննէս իբրև զմարգարէ ունէին։ Պատասխանի ետուն Յիսուսի և ասեն. ոչ գիտեմք։ Ասէ ցնոսա և նա. և ոչ ես ասեմ ձեզ՝ որով իշխանութեամբ առնեմ զայս։ Բայց զի՞արդ թուի ձեզ. առն միոջ էին երկու որդիք. և մատուցեալ առ առաջինն՝ ասէ. որդեակ, երթ այսօր գործեա յայգւոջ։ Նա պատասխանի ետ և ասէ. երթամ տէր, և ոչ չոգաւ։ Մատեաւ և առ միւսն, և ասէ նոյնպէս. նա պատասխանի ետ և ասէ. ոչ կամիմ. բայց յետոյ զղջացաւ և չոգաւ յայգին։ Արդ ո՞ յերկոցունց արար զկամս հօրն։ Ասեն. յետինն։ Ասէ ցնոսա Յիսուս. ամէն ասեմ ձեզ, զի մաքսաւորք և պոռնիկք յառաջեսցեն քան զձեզ յարքայութիւն երկնից։ Զի եկն Յովհաննէս ճանապարհաւ արդարութեան, և ոչ հաւատացէք նմա. և մաքսաւորք և պոռնիկք հաւատացին նմա, և դուք տեսէք՝ և ոչ զղջացարուք յետոյ հաւատալ նմա։ 32։

ՀԱՄԲԱՐՁԻ ԴՁ

Որք տնկակից եղաք նմանութեան մահու քո։ 718։

Համբարձաւ Տէրն մեր Քրիստոս օրհնութեամբ։ 707։

ՍԱՂ. ԻԳ. ԿՑ. Համբարձէք։ Փխ. Տեառն է։ 715։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մարկոսի։ ԺԱ. 12։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ ի վաղիւ անդր մինչդեռ ելանէին ի Բեթանիա՛ քաղցեաւ. և տեսեալ թզենի մի ի բացուստ տերևալից, և եկն թէ գտանիցէ ինչ ի նմա. և իբրև եկն ի նա, ոչ ինչ եգիտ՝ բայց միայն տերև. զի ոչ իսկ էր ժամանակ թզոյ։ Պատասխանի ետ և ասէ ցնա. մի՛ ևս ոք յաւիտեան ի քէն պտուղ կերիցէ։ Եւ լսէին աշակերտքն նորա։ Գան յԵրուսաղէմ. և մտեալ ի տաճարն՝ սկսաւ հանել զվաճառականսն և զգնօղս՝ որ էին ի տաճարին. և զսեղանս հատավաճառացն ցրուեաց, և զաթոռս աղաւնեվաճառացն կործանեաց. և ոչ թողոյր՝ եթէ ոք անօթ ինչ անցուցանիցէ ընդ տաճարն։ Ուսուցանէր զնոսա և ասէր. գրեալ է, թէ տունն իմ տուն աղօթից կոչեսցի

Digitized by Google

ամենայն հեթանոսաց. և դուք արարէք զդա այրս աւազակաց: Լուան քահանայապետքն և դպիրք, և խնդրէին թէ որպէս կորուսցեն զնա, բայց երկնչէին ի նմանէ. զի ամենայն ժողովուրդն զարմացեալ էր ընդ ուսումն նորա: Եւ իբրև երեկոյ լինէր՝ արտաքոյ քան զքաղաքն ելանէին: Եւ մինչ դեռ այգուցն առ նովաւ անցանէին, տեսին զթզենին ցամաքեալ յարմատոց. յիշեաց Պետրոս՝ և ասէ ցնա. ռաբբի, ահաւասիկ թզենին զոր անիծեր՝ ցամաքեցաւ: Պատասխանի ետ Յիսուս և ասէ ցնոսա. եթէ ունիցիք զհաւատսն Աստուծոյ, ամէն ասեմ ձեզ, որ ոք ասիցէ լերինս այսմիկ՝ բարձիր և անկիր ի ծով, և ոչ երկմտիցէ ի սրտի իւրում, այլ հաւատայցէ թէ զոր ասէն լինի, եղիցի նմա զոր ինչ և ասիցէ: Վասն այսորիկ ասեմ ձեզ. ամենայն ինչ վասն որոյ աղօթս արարեալ խնդրիցէք և հաւատայցէք թէ առնուցուք, եղիցի ձեզ: Եւ յորժամ յաղօթս կայցէք, թողուցուք եթէ ունիցիք ինչ զումեքէ. զի և հայրն ձեր որ յերկինս է, թողցէ ձեզ զյանցանս ձեր: (Զի եթէ դուք ոչ թողուցուք, և ոչ հայրն ձեր որ յերկինս է՝ թողցէ ձեզ զյանցանս ձեր:) 26:

Քարոզ. Խնդրեսցուք: Կեցո: Աղօթ. Թագաւոր:

---

# Է. ԵՐԵՔՇԱԲԱԹԻ. ԳՋ

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԴԿ

Այսօր ցնծան երկինք և երկիր յարութեամբ ‖ քո Տէր Աստուած հարցն մերոց: Այսօր նորոգեցան տիեզերք ամենայն յարութեամբ քո: Այսօր հրեշտակապետն աւետարանէր զյարութիւն քո:

Գ. Ըզտէր օրհնեցէք ‖ բարձր արարէք ընդ նա յաւիտեան: Որ չարչարանօք խաչին փրկեաց զտիեզերս. և հեղմամբ արեանն իւրով զթողութիւն մեզ շնորհեաց բարձր: Որ երեքօրեայ թաղմամբ զգեժոխս աւերեաց. և յարութեամբն իւրով զյարութիւն մեզ պարգևեաց բարձր:

Digitized by Google

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԴԿ

Աստուածածին սուրբ կոյս անհարսնացեալ։ 286։

ՈՂՈՐՄԵԱ ԴԿ

Ո՞ր զկերպարանս մահացու բնութեան ազգի մարդկան. յանձն առեր Աստուած Բանդ էակից Հօր. եւ եկիր կամաւ ի խաչ։ Ո՞ր ի վերայ նախաստեղծին ըզմեռանիլ. յանձն առեր. համբերելով չարչարանաց ի խաչին բարձրացար Բանդ գոյակից Հօր. եւ իջեր ի գերեզման։ Եւ յերրորդ աւուր յարեար զմահու լուծեր զիշխանութիւն. արձակելով զմեռեալսն ի նմանէ Բանդ փառակից Հօր. եւ նստար ընդ աջմէ Հօր։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԴԿ

Էջ հրեշտակն յերկնից աւետաւոր երջանիկ եւ սուրբ կանանցն քարոզէր ասելով. ‖ Եւ ձեզ ասեմ զ վերստին լոյսն ծագեալ ի յաշխարհ։ Այսօր տեսանել ահեղակերպ հրեշտակապետին մերձեալ ի գունդ զինուորացն. այսօր սրտաբեկեալ պահապանացն զարհուրեալ մեռանէին. Եւ։ Այսօր ցնծայ Երուսաղէմն վերին. այսօր ցնծայ Սիոն մայր եկեղեցի քանզի փրկիչն մեր յարեաւ և աւերեաց զդժոխս. Եւ մեզ ասեմ զ վերստին լոյսն ծագեալ ի Հօրէ։

ՍԱՂ. ԽԶ. կց. Համբարձաւ։ փխ. Ծափս։ 711։

Սրբոյ Աւետարանին որ ըստ Ղուկասու։ Ի. 9։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Սկսաւ ասել առ ժողովուրդն զառակս զայս. այր մի տնկեաց այգի, և ետ զնա մշակաց. և ինքն գնաց ճանապարհ ժամանակս բազումս։ Եւ ի ժամու առաքեաց առ մշակսն ծառայ, զի ի պտղոյ այգւոյն տացեն նմա. և մշակքն գան հարին զնա՝ և արձակեցին ունայն։ Եւ յաւել միւս ևս ծառայ յղել. նոքա և զնա ևս գան հարին, անարգեցին և առաքեցին ունայն։ Եւ յաւել զեր-

Digitized by Google

*բորդն առաքել. Նոքա և զնա վիրաւորեցին, և հանին արտաքս։ Ասէ տէր այգւոյն. զի՞նչ արարից, առաքեցից զորդի իմ սիրելի, թերևս ի սմանէ պատկառեսցեն։ Իբրև տեսին զնա մշակքն, խորհեցան ընդ միմեանս և ասեն. սա է ժառանգն. սպանցուք զսա, զի մեր լինիցի ժառանգութիւնն. և հանին զնա արտաքս քան զայգին և սպանին։ Արդ զի՞նչ արասցէ ընդ նոսա տէր այգւոյն. ո՞չ ապաքէն գայցէ և կորուսանիցէ զմշակսն զայնոսիկ, և տայցէ զայգին այլոց։ Իբրև լուան՝ ասեն. քաւ, մի՛ լիցի։ Եւ նա հայեցեալ ընդ նոսա ասէ. իսկ զի՞նչ իցէ այն որ գրեալն է՝ եթէ վէմն զոր անարգեցին շինողքն, նա եղև գլուխ անկեան։ Ամենայն որ ընդհարցի ընդ վէմն ընդ այս՝ խորտակեսցի, և յորոյ վերայ անկցի՝ հոսեսցէ զնա։ Եւ խնդրէին դպիրքն և քահանայապետք արկանել ի նա ձեռս ի նմին ժամու, և երկեան ի ժողովրդենէն. զի գիտացին՝ թէ առ նոսա ասաց զառակն զայն։ Եւ ապա սպասեցին, և առաքեցին դաւաճանս կեղծաւորեալս՝ զանձինս առ արդարս ունել, զի ըմբռնեսցեն զնա բանիւք, առ ի մատնել զնա պետութեան և իշխանութեան դատաւորին։ Հարցին ցնա և ասեն. վարդապետ, գիտեմք եթէ ուղիղ խօսիս և ուսուցանես, և ոչ առնուս ակն. այլ ճշմարտութեամբ զճանապարհն Աստուծոյ ուսուցանես. արժա՞ն է մեզ կայսեր հարկս տալ՝ թէ ոչ։ Եւ նայեցեալ ընդ խորամանկութիւն նոցա՝ ասէ ցնոսա. ցուցէք ինձ զդահեկանն։ Եւ նոքա ցուցին։ Եւ ասէ. զո՞յր պատկեր և գիր ունի։ Պատասխանի ետուն և ասեն. զկայսեր։ Եւ նա ասէ ցնոսա. արդ երթայք տուք զկայսերն՝ կայսեր, և զԱստուծոյն՝ Աստուծոյ։ Եւ ոչ կարացին զնա ըմբռնել բանիւք առաջի ժողովրդեանն, և զարմացեալ ընդ պատասխանին նորա՝ լռեցին։ 26։*

Քարոզ. Խնդրեսցուք։ Կեցո։ Աղօթ. Քում ամենազօր։

---

ՅԵՐԵԿՈՅԻՆ

*ՍԱՂ. ԽԶ. ԿՑ. Համբարձաւ։ Փխ. Ծափս։ 711։*

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի։ ԻԱ. 33։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս ասէ.

Այլ առակ լուարուք. այր մի էր տանուտէր՝ որ տըն-

կեաց այգի, և ցանգով պատեաց զնա, և փորեաց ի նմա հնձան, և շինեաց աշտարակ. և ետ զնա մշակս, և գնաց ի տար աշխարհ։ Իբրև մերձեցաւ ժամանակ պտղոյ, առաքեաց զծառայս իւր առ մշակսն՝ առնուլ զպտուղ նորա. և կալեալ մշակացն զծառայս նորա, զոմն տանջեցին, զոմն սպանին, զոմն քարկոծեցին։ Դարձեալ առաքեաց այլ ծառայս բազումս քան զառաջինսն, և արարին նոցա նոյնպէս։ Յետոյ առաքեաց առ նոսա զորդի իւր, և ասէ. Թերևս ամաչեսցեն յորդւոյ աստի իմմէ. Իսկ մշակքն իբրև տեսին զորդին, ասեն ընդ միտս. սա է ժառանգն. եկայք սպանցուք զսա, և կալցուք զժառանգութիւն սորա։ Եւ առեալ հանին զնա արտաքոյ քան զայգին, և սպանին։ Արդ յորժամ եկեսցէ տէր այգւոյն, զի՞նչ արասցէ մշակացն այնոցիկ։ Ասեն ցնա. զչարսն չարաչար կորուսցէ, և զայգին տացէ այլոց մշակաց, որք տայցեն նմա զպտուղս ի ժամու իւրեանց։ Ասէ ցնոսա Յիսուս. չիցէ՞ երբեք ընթերցեալ ձեր ի գիրս. զվէմըն՝ զոր անարգեցին շինողք, նա եղև գլուխ անկեան. ի Տեառնէ եղև այս, և է սքանչելի յաչս մեր։ Վասն այսորիկ ասեմ ձեզ, զի բարձցի ի ձէնջ արքայութիւն Աստուծոյ, և տացի ազգի որ առնիցէ զպտուղս նորա։ Եւ որ անկցի ի վերայ վիմիս այսորիկ՝ փշրեսցի, և յոյր վերայ անկցի՝ հոսեսցէ զնա։ Իբրև լուան քահանայապետքն և դպիրք և փարիսեցիք զառակս նորա, գիտացին թէ վասն նոցա ասաց։ Եւ խնդրէին զնա ունել, բայց երկեան ի ժողովրդոցն. քանզի իբրև զմարգարէ ունէին զնա։ 46։

ՀԱՄԲԱՐՁԻ ԴՁ

Որք տնկակից եղաք նմանութեան մահու։ 718։

Համբարձաւ Տէրն մեր յերկինս։ Եբեր փոխ։ 706։

ՍԱՂ. ԻԳ. կց. Համբարձէք։ Փխ. Տեառն է։ 715։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մարկոսի։ ԺԱ. 27։

Տերամբ մերով Յիսուսիւ Քրիստոսիւ

Գան միւսանգամ յԵրուսաղէմ. և մինչդեռ ի տաճարի անդ զգնայր, գան առ նա քահանայապետքն և դպիրք և ծերք, և ասեն ցնա. որո՞վ իշխանութեամբ առնես զայդ, և ո՞վ ետ քեզ զիշխանութիւնդ զայդ։ Պատաս-

խանի եւ Յիսուս եւ ասէ ցնոսա. Հարցից եւ ես զձեզ
բան մի, տուք ինձ պատասխանի, եւ ես ասացից ձեզ՝
որով իշխանութեամբ առնեմ զայս։ Մկրտութիւնն Յով֊
հաննու յերկնի՞ց էր՝ թէ ի մարդկանէ, տուք ինձ պա֊
տասխանի։ Խորհէին ընդ միմեանս եւ ասէին. եթէ ա֊
սեմք եթէ յերկնից. ասէ ցմեզ՝ իսկ ընդէ՞ր ոչ հաւատա֊
ցէք նմա. այլ եթէ ասեմք՝ ի մարդկանէ, երկնչիմք ի
ժողովրդենէն. զի ամենեքին գիտէին զՅովհաննէս՝ թէ
մարգարէ էր։ Պատասխանի ետուն եւ ասեն ցՅիսուս.
չգիտեմք։ Եւ Յիսուս ետ նոցա պատասխանի եւ ասէ.
եւ ոչ ես ասեմ ձեզ՝ որով իշխանութեամբ առնեմ զայս։
Եւ սկսաւ խօսել ընդ նոսա առակօք եւ ասել. այր մի
տնկեաց այգի, եւ ած շուրջ զնովաւ ցանգ, եւ զուբ հըն֊
ձան փորեաց եւ շինեաց աշտարակ, եւ ետ զնա ցմշակս
եւ գնաց ի տար աշխարհ։ Եւ առաքեաց առ մշակսն ի
ժամանակի ծառայ մի, զի ի մշակաց անտի առցէ ի պտղոյ
այգւոյն. եւ նոցա կալեալ՝ գան հարին զնա, եւ արձա֊
կեցին ունայն։ Դարձեալ առաքեաց այլ ծառայ, եւ զնա
կառափնատեցին՝ եւ արձակեցին անարգեալ։ Եւ դարձեալ
այլ առաքեաց, եւ զնա սպանին. եւ զբազումս այլս, զո֊
մանս՝ հարկանէին, եւ զոմանս՝ սպանանէին։ Ապա որդի
մի էր իւր սիրելի, զնա առաքեաց առ նոսա յետոյ, եւ
ասէ. թերեւս ամաչեսցեն յորդւոյ աստի իմմէ։ Իսկ
մշակքն իբրեւ տեսին զնա զի գայր, ասեն ցմիմեանս.
սա է ժառանգն. եկայք սպանցուք զսա, եւ մեր լիցի
ժառանգութիւնն. եւ կալեալ զնա սպանին, եւ հանին
արտաքոյ այգւոյն։ Արդ զի՞նչ արասցէ տէր այգւոյն։
Եկեսցէ եւ կորուսցէ զմշակսն, եւ տացէ զայգին ի ձեռս
այլոց։ Եւ ո՞չ զգիրն զայն իցէ ընթերցեալ ձեր, թէ ըզ֊
վէմն զոր անարգեցին շինօղքն, նա եղեւ գլուխ անկեան.
ի Տեառնէ եղեւ այս, եւ է սքանչելի յաչս մեր։ Եւ խըն֊
դրէին զնա ունել, եւ երկեան ի ժողովրդենէ անտի. զի
գիտացին՝ թէ առ նոսա ասաց զառակն. եւ թողին զնա
եւ գնացին։ Եւ առաքեն առ նա զոմանս ի փարիսեցւոց
անտի եւ ի հերովդիանոսաց, զի զնա որսասցեն բանիւ։
Եւ նոքա եկեալ հարցանէին զնա նենգութեամբ եւ ասէին.
վարդապետ, գիտեմք զի ճշմարիտ ես, եւ ոչ ինչ փոյթ
է քեզ զումեքէ. զի ոչ հայիս յերեսս մարդկան, այլ
ճշմարտութեամբ զճանապարհն Աստուծոյ ուսուցանես.

Digitized by Google

արդ ասա մեզ, արժա՞ն է հարկս տալ կայսեր՝ եթէ ոչ. տացո՞ւք՝ թէ ոչ տացուք։ Եւ Յիսուս գիտաց զկեղծաւորութիւն նոցա, ասէ ցնոսա. զի՞ փորձէք զիս կեղծաւորք. բերէք ինձ դահեկան մի զի տեսից։ Եւ նոքա բերին. և ասէ ցնոսա. ո՞յր է պատկերս այս կամ գիր։ Եւ նոքա ասեն ցնա. կայսեր։ Պատասխանի ետ Յիսուս և ասէ ցնոսա. երթայք տուք զկայսերն՝ կայսեր, և զԱստուծոյն՝ Աստուծոյ։ Եւ զարմացան ընդ նա։ ԺԲ. 17։

Քարոզ. Խնդրեսցուք։ Կեցո։ Աղօթ. Թագաւոր։

---

# Է. ՉՈՐԵՔՇԱԲԱԹԻ. ԳԿ

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

### ՀԱՐՑ ԴԿ

Փառաւորեալ է անուն քո սուրբ. Տէ մր Աստուած հարցն մերոց։ Որ ի բարձունս բնակեալ ես. եւ հայիս յարարածս քո քաղցրութեամբ. փառաւորեալ։ Որ ի յերկրի երեւեցար եւ ընդ մարդկան շրջեցար թագաւոր յաւիտենից. փառաւորեալ։

Գ. Ըզ Տէ մր ‖ Ամենայն արարածք օրհնեսցեն. եւ բարձր արարէք զեկեալն ի փրկութիւն մարդկան։ Որ էակիցն է Հօր եւ սուրբ Հոգւոյն. ի յերկրի երեւեցաւ ամենայն։ Որ հրեշտակացն անտեսանելին է. ի վերայ խաչին տեսաւ ամե։ Որ սրովբէիցն անհասանելին է. ի գերեզմանի եդաւ ամե։ Որ քրովբէիցն անիմանալին է. ի յերրորդ աւուր յարեաւ ամե։

### ՄԵԾԱՑՈՒՑԷ ԴԿ

Զքեզ Աստուածածին. աղբիւր անապառ լուսոյն։ 282։

### ՈՂՈՐՄԵԱ ԴԿ

Թինս իմ Ողորմեա ինձ Աստուած։ Որ ի Հօրէ առաքեցար անըսկիզբն Որդի և ի սրբոյ կուսէն ծնար մեզ։ Որ ի խաչին բեւեռեցար Աստուած Բանդ.

և ի հօրէ ոչ մեկնեցար . ող ։ Որ ի գերեզմանի ե-դար . թագաւոր անմահ և ի յերրորդ աւուր յարեար . ող ։ Որ ի յերկինս համբարձար . ամենակարող և ընդ աջմէ հօր նստար . ող ։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԴԿ

Հրեշտակացըն դասքն . յերկնից ի յերկիր վայրա-բերեալ ի սպաս Որդւոյն Աստուծոյ ։ Հրեշտակին ձայնիւ . ցընծայր կոյսըն սուրբ և ընթացեալ առ աշա-կերտսըն պատմէր ։ Կենդանին յարեաւ . զերկունըս մահու ելոյծ և կեանըս պարգեւեաց աշխարհի ։

ՍԱՂ . ԽԶ . ԿՑ . Համբարձաւ ։ Փխ . Ծափս հարէք ։ 711 ։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու ։ Ի . 27 ։

Առ Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Մատուցեալ ոմանք ի սադուկեցւոցն, որք հակառակէին չլինել յարութեան, հարցին զնա և ասեն . վարդապետ, Մովսէս գրեաց մեզ . եթէ ուրուք եղբայր մեռանիցի՝ ո-րոյ իցէ կին, և անորդի իցէ, զի առնուցու եղբայր նո-րա զկինն, և յարուսցէ զաւակ եղբօր իւրում ։ Արդ եօ-թըն եղբարք էին . և առաջնոյն առեալ կին, մեռաւ ա-նորդի . առ զնա և երկրորդն, մեռաւ և նա անորդի . առ զնա և երրորդն, նոյնպէս և եօթանեքին, և ոչ թո-ղին որդիս . մեռաւ և կինն . արդ ի յարութեանն ում ի նոցանէ լինիցի կին . զի եօթանեքին կալան զնա կին ։ Պատասխանի ետ նոցա Յիսուս և ասէ . որդիք աշխար-հիս այսորիկ կանայս առնեն և արանց լինին, իսկ որ արժանի լինիցին այնմ աշխարհի հասանել և յարութեանն որ ի մեռելոց, ոչ կանայս առնեն և ոչ արանց լինին ։ Քանզի և ոչ մեռանել ևս կարեն, զի հաւասար հրեշտա-կաց են՝ և որդիք Աստուծոյ . քանզի յարութեան որդիք են ։ Այլ զի յառնեն մեռեալք, և Մովսէս գուշակեաց ի մորենւոջն, որպէս ասէ զՏէառնէ Աստուծոյ Աբրահամու, և զԱստուծոյ Սահակայ, և զԱստուծոյ Յակովբայ ։ Եւ Աստուած չէ մեռելոց՝ այլ կենդանեաց . զի ամենեքին նմա կենդանի են ։ Պատասխանի ետուն նմա ոմանք ի դպրացն և ասեն . վարդապետ, բարւոք ասացեր ։ Եւ ոչ ևս ոք իշխէր հարցանել զնա և ոչ ինչ ։ 40 ։

Digitized by Google

Քարոզ. Խնդրեսցուք: Կեցո: Աղօթ. Քում ամենազօր:

---

## ՅԵՐԵԿՈՅԻՆ

ՍԱՂ. ԽԶ. կց. Համբարձաւ: փխ. Ծափս: 711:

Սրբոյ Աւետարանին որ ըստ Մատթէոսի: ԻԲ. 1:

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Դարձեալ պատասխանի ետ (Յիսուս), և ասէ ցնոսա առակօք. Նմանեցաւ արքայութիւն երկնից առն թագաւորի, որ արար հարսանիս որդւոյ իւրում: Եւ առաքեաց զծառայս իւր կոչել զհրաւիրեալսն ի հարսանիսն, և ոչ կամէին գալ: Դարձեալ առաքեաց այլ ծառայս և ասէ. ասացէք հրաւիրելոցն, ահաւասիկ զճաշ իմ պատրաստեցի. զուարակք իմ և պարարակք զենեալ են, և ամենայն ինչ պատրաստ է. եկայք ի հարսանիսս: Եւ նոքա յա-լացեալ՝ գնացին ոմն յագարակ իւր, և ոմն ի վաճառս իւր, և այլք կալան զծառայս նորա՝ թշնամանեցին և սպանին: Իսկ թագաւորն իբրև լուաւ՝ բարկացաւ, և առաքեաց զզօրս իւր և սատակեաց զսպանողսն զայնոսիկ, և զքաղաքն նոցա այրեաց: Յայնժամ ասէ ցծառայս իւր. հարսանիքս պատրաստ են, և հրաւիրեալքն չէին արժանի: Արդ երթայք յանցս ճանապարհաց, և զորս միանգամ գտանիցէք՝ կոչեցէք ի հարսանիսս: Եւ ելեալ ծառայքն ի ճանապարհս ժողովեցին զամենեսեան զորս և գտին՝ զչարս և զբարիս, և լցան հարսանիքն բազմականօք: Եւ մտեալ թագաւորն հայել զբազմականօքն՝ ետես անդ այր մի՝ որ ոչ էր զգեցեալ հանդերձ հարսանեաց. և ասէ ցնա. ընկեր, զիա՞րդ մտեր այսր, զի ոչ ունէիր հանդերձ հարսանեաց. և նա պապանձեցաւ: Յայնժամ ասէ թագաւորն ցպաշտաւորսն. կապեցէք զդորա զոտս և զձեռս՝ և հանէք զդա ի խաւարն արտաքին, անդ եղիցի լալ և կրճել ատամանց: Զի բազումք են կոչեցեալք՝ և սակաւք են ընտրեալք: 14:

ՀԱՄԲԱՐՁԻ ԴՋ

Որք տնկակից եղաք նմանութեան մահու: 718:

Համբարձաւ Տէրն մեր Քրիստոս օրհնութեամբ: 707:

ՍԱՂ. ԻԴ. կց. Համբարձէք: փխ. Տեառն է: 715:

Digitized by Google

## Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մարկոսի: ԺԲ. 18:

### Առ Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Գան (առ Նա) սադուկեցիքն որ ասեն՝ թէ չիք յարութիւն. հարցանէին ցնա և ասէին. վարդապետ, Մովսէս գրեաց մեզ, եթէ ուրուք եղբայր մեռանիցի, և թողուցու կին և որդի ոչ թողուցու, զի առցէ եղբայր նորա զկինն նորա և յարուսցէ զաւակ եղբօր իւրում: Արդ եղբարք եօթն էին առ մեզ. առաջինն ա՛ռ կին և մեռաւ, և ոչ եթող զաւակ: Եւ երկրորդն ա՛ռ զնոյն, և մեռաւ, և ոչ նա եթող զաւակ. նոյնպէս և երրորդն ա՛ռ զնոյն, և եօթնեքեան իսկ, և ոչ թողին զաւակ. յետ ամենեցուն մեռաւ և կինն: Արդ ի յարութեանն յորժամ յառնիցեն, ո՞ր ի նոցանէ լինիցի կինն, զի եօթնեքեան կալան զնա կին: Պատասխանի ետ Յիսուս և ասէ ցնոսա. ո՞չ վասն այդորիկ իսկ մոլորեալ էք, զի ոչ գիտէք զգիրս և ոչ զզօրութիւնն Աստուծոյ: Զի յորժամ ի մեռելոց յարիցեն, ոչ արք կանայս առնեն, և ոչ կանայք արանց լինին. այլ իբրև զհրեշտակս իցեն՝ որ յերկինսն են: Այլ վասն յարութեան մեռելոց զի յառնեն, ո՞չ իցէ ընթերցեալ ձեր ի գիրսն Մովսէսի՝ ի մորենւոյն որպէս ասաց ցնա Աստուած. ես եմ ասէ՝ Աստուած Աբրահամու և Աստուած Իսահակայ և Աստուած Յակովբայ. և ոչ է Աստուած մեռելոց՝ այլ կենդանեաց. և արդ դուք յոյժ մոլորեալ էք: Եւ մատուցեալ մի ոմն ի դպրացն՝ լսէր նոցա մինչ վիճէին. իբրև ետես թէ բարւոք ետ նոցա զպատասխանին, եհարց ցնա և ասէ. ո՞ր պատուիրան է առաջին: Եւ Յիսուս ասէ ցնա. առաջին քան զամենայն, լուր Իսրայէլ, Տէր Աստուած մեր՝ Տէր մի է. և սիրեսցես զՏէր Աստուած քո յամենայն սրտէ քումմէ, և յամենայն անձնէ քումմէ, և յամենայն մտաց քոց, և յամենայն զօրութենէ քումմէ. այս է առաջին պատուիրան: Եւ երկրորդն նման սմին. սիրեսցես զընկեր քո իբրև զանձն քո. մեծ քան զսոսա այլ պատուիրան ոչ գոյ: Եւ ասէ ցնա դպիրն. բարւոք է վարդապետ. ճշմարտութեամբ ասացեր՝ թէ մի է Աստուած, և ոչ գոյ այլ բաց ի նմանէ: Եւ սիրելն զնա յամենայն սրտէ և յամենայն զօրութենէ և յամենայն մտաց, և սիրելն զընկերն իբրև զանձն, առաւել է քան զողջակէզս և

Digitized by Google

զզոհս։ Եւ տեսեալ Յիսուսի թէ իմաստութեամբ ետ ըզ-
պատասխանին՝ ասէ ցնա. չես հեռի յարքայութենէն
Աստուծոյ։ Եւ ոչ ևս ոք իշխէր ինչ հարցանել ցնա։ 34։

Քարոզ. Խնդրեսցուք։ Կեցո։ Աղօթ. Թագաւոր։

---

# Է · ՀԻՆԳՇԱԲԱԹԻ · ԴՋ

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

### ՀԱՐՑ ԴԿ

Որ յառաջ քան զարեւ անուն քո ի յերկրի երկ-
ւեցար. եւ ընդ մարդկան շրջեցար ‖ Աստուած։
Հարցըն մերոց։ Կամաւորապէս անչընչացար եւ ի
ծոց Հօր աւանդեցեր զքո սուրբ զհոգիդ Աստուած։
Եւ ըզհրաշալի անունըդ քո մարգարէն վերագուշեաց
հոգի երեսաց ը մերոց Տէր Քրիստոս. Աստուած։

Գ. Ըզ Տէր ‖ Միաբանութեամբ օրհնեցէք եւ
առաւելաբարձր արարէք ըզնա յաւի-
տեան։ Զյարուցեալն ի մեռելոց Քրիստոս և զկենդա-
նին յաւիտենից. միաբա։ Որ ըզդրունըս դըժոխոց
փըշրեաց և զարգելեալսն ի նմա կորզեաց ի կեան-
միաբա։ Որ վիմովըն կընքելով յարեաւ և դրօքըն փա-
կելովք եմուտ առ աշակերտսն. միաբա։

### ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԴԿ

Աստուածածին և սրբուհի. որ զԲանն Աստուած։ 283։

### ՈՂՈՐՄԵԱ ԴԿ

Իջեր յերկնից Միածին անմեկնելիդ ի Հօրէ. հա-
ւանեցեալ սուրբ Հոգւոյն Բանըդ մարմնացար ի կու-
սէն։ Եկիր ի չարչարանս չարչարանացըն լուծի-
ձեռք որ զերկինս արարին տարածեցեր ի խաչին։
Համբերեցեր վասն մերոյ փըրկութեան. ըզմեռանելի
յանձն առեր կենդանատու մեռելոց։

### ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԴԿ

Հրեշտակ քո Տէր որ զյարութիւնըն քարոզեաց

Զպահապանսըն զարհուրեցոյց զկանանյըն լուսաւորեաց անճըլ վ։ Զի խընդրէ՛ք ըզկենդանին ընդ մեռեալս․ չէ՛ աստ այլ յարեաւ ։

ՍԱՂ․ ԽԶ․ ԿՅ․ Համբարձաւ ։ փխ․ Ծափս ։ 711 ։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու ։ Ի․ 41 ։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Ասէ և առ նոսա․ զիա՞րդ ասեն զՔրիստոսէ՝ թէ որդի է Դաւթի․ զի ինքն Դաւիթ ասէ ի գիրս սաղմոսաց․ Ասաց Տէր ցՏէր իմ, նիստ ընդ աջմէ իմմէ, մինչև եդից զթշնամիս քո պատուանդան ոտից քոց ։ Իսկ արդ եթէ Դաւիթ զնա Տէր կոչէ, զիա՞րդ որդի նորա իցէ ։ Եւ լու ի լու ամենայն ժողովրդեանն ասէ ցաշակերտսն․ զգոյշ լերուք ի դպրացն, որ կամին պատմուճանօք շըրջել, և սիրեն ողջոյնս ի հրապարակս, և զնախաթոռս ի ժողովուրդս, և զբարձերէցս յընթրիս ։ Որ ուտեն զտունս այրեաց, և պատճառանօք յերկարեն զաղօթս․ նոքա ընկալցին աւելի դատաստանս ։ Եւ հայեցեալ ետես զմեծատունսն որ արկանէին զտուրս իւրեանց ի գանձանակն ։ Ետես և զկին ոմն այրի աղքատ, որ արկ անդր երկուս լումայս ։ Եւ ասէ․ արդարև ասեմ ձեզ, զի այրին այն աղքատ աւելի արկ քան զամենեսին ։ Ամենեքին նոքա ի մթերից իւրեանց արկին յընծայսն Աստուծոյ, բայց նա ի կարօտութենէ իւրմէ զամենայն զկեանս իւր զոր ունէր՝ արկ ։ ԻԱ․ 4 ։

Քարոզ․ Խնդրեսցուք ։ կեցո ։ Աղօթ․ Քում ամենազօր ։

---

ՅԵՐԵԿՈՅԻՆ

ՍԱՂ․ ԽԶ․ ԿՅ․ Համբարձաւ ։ փխ․ Ծափս ։ 711 ։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի ։ ԻԲ․ 15 ։

Վասն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի

Յայնժամ գնացեալ փարիսեցիքն՝ առին խորհուրդ (զնմանէ) թէ ո՛րպէս դնիցեն նմա որոգայթ բանիւք ։ Եւ առաքեն առ նա զաշակերտսն իւրեանց հերովդիանոսօքն հանդերձ՝ և ասեն․ վարդապետ, գիտեմք զի ճշմարիտ ես, և զճանապարհն Աստուծոյ ճշմարտութեամբ ուսուցանես, և ոչ է քեզ փոյթ զումեքէ, և ոչ հայիս

յերեսս մարդոյ. արդ ասա մեզ, զիա՞րդ թուի քեզ. պա՞րտ է հարկս տալ կայսեր՝ թէ ոչ: Գիտաց Յիսուս զխորամանգութիւնն նոցա, և ասէ. զի՞ փորձէք զիս կեղծաւորք. ցուցէք ինձ զդահեկան հարկին: Եւ նոքա մատուցին նմա դահեկան մի. և ասէ ցնոսա. ո՞յր է պատկերս այս կամ գիր: Ասեն. կայսեր: Յայնժամ ասէ ցնոսա. երթայք տուք զկայսերն՝ կայսեր, և զԱստուծոյն՝ Աստուծոյ: Իբրև լուան՝ զարմացան, և թողին զնա և գնացին: Յայնմ աւուր մատեան առ նա սադուկեցիքն, որ ասէին՝ թէ չիք յարութիւն. հարցին ցնա և ասեն. վարդապետ, Մովսէս ասաց. եթէ ոք մեռցի անորդի. արասցէ զկին նորա եղբայր իւր, և յարուսցէ զաւակ եղբօր իւրում: Էին առ մեզ եղբարք եօթն. առաջինն արար կին՝ և մեռաւ. և զի ոչ ունէր զաւակ, եթող ըզկինն իւր եղբօր իւրում: Նոյնպէս և երկրորդն և երրորդն, մինչև ցեօթներորդն. յետ ամենեցուն մեռաւ և կինն: Արդ ի յարութեանն ո՞յր յեօթանցն եղիցի նա կին, զի ամենեքին կալան զնա կին: Պատասխանի ետ նոցա Յիսուս և ասէ. մոլորեալք, ոչ գիտէք զգիրս և ոչ զզօրութիւն Աստուծոյ. զի ի յարութեանն ոչ կանայս առնեն և ոչ արանց լինին, այլ են իբրև զհրեշտակք յերկինս: Բայց վասն յարութեան մեռելոց չիցէ՞ ընթերցեալ զասացեալն ձեզ յԱստուծոյ. Ես եմ Աստուած Աբրահամու, Աստուած Իսահակայ և Աստուած Յակոբայ. և չէ Աստուած՝ Աստուած մեռելոց, այլ կենդանեաց: Իբրև լուան ժողովուրդքն, զարմանային ընդ վարդապետութիւն նորա: Իսկ փարիսեցիքն իբրև լուան՝ եթէ պապանձեցոյց զսադուկեցիսն, ժողովեցան ի միասին: Եւ եհարց մի ոմն ի նոցանէ զնա՝ փորձելով, և ասէ. վարդապետ, ո՞ր պատուիրան է մեծ յօրէնս: Եւ Յիսուս ասէ ցնա. սիրեսցես զՏէր Աստուած քո յամենայն սրտէ քումմէ՝ և յամենայն անձնէ քումմէ՝ և յամենայն մտաց քոց. այս է մեծն և առաջին պատուիրան. և երկրորդն՝ նման սմին, սիրեսցես զընկեր քո իբրև զանձն քո: Յայս երկուս պատուիրանս ամենայն օրէնք և մարգարէք կախեալ կան: Եւ ի ժողովել փարիսեցւոցն, եհարց ցնոսա Յիսուս և ասէ. զիա՞րդ թուի ձեզ վասն Քրիստոսի, ո՞յր որդի է: Ասեն ցնա. Դաւթի: Ասէ ցնոսա Յիսուս. իսկ զիա՞րդ Դաւիթ Հոգւովն կոչէ զնա Տէր, և ասէ. ասաց Տէր

Digitized by Google

ցՏէր իմ, Նիստ ընդ աջմէ իմմէ, մինչև եդից զԹշնամիս քո պատուանդան ոտից քոց․ իսկ եթէ Դաւիթ զՆա Տէր կոչէ, զիա՞րդ որդի Նորա իցէ ։ Եւ ոչ ոք կարէր տալ Նմա պատասխանի բան մի, և ոչ իշխէր ոք յայնմ օրէ հարցանել զՆա և ոչ ինչ ։ 46 ։

ՀԱՄԲԱՐՁԻ ԴՁ

Որք տնկակից եղաք Նմանութեան մահու ։ 718 ։

Համբարձաւ Տէրն մեր յերկինս ։ Երէ+ փոխն ։ 706 ։

ՍԱՂ․ ԻԳ․ Կ8․ Համբարձէք ։ փխ․ Տեառն է ։ 715 ։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մարկոսի ։ ԺԲ․ 35 ։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Պատասխանի ետ (Յիսուս) և ասէ՝ մինչ ուսուցանէր ի տաճարին․ զիա՞րդ ասեն դպիրքն, թէ Քրիստոսն որդի Դաւթի է․ և ինքն Դաւիթ Հոգւովն սրբով ասէ․ ասաց Տէր ցՏէր իմ, Նիստ ընդ աջմէ իմմէ՝ մինչև եդից զԹըշնամիս քո պատուանդան ոտից քոց ։ Արդ եթէ ինքն իսկ Դաւիթ զՆա Տէր կոչէ՝ զիա՞րդ իցէ որդի Նորա ։ Եւ բազում ժողովուրդ լսէր Նմա քաղցրութեամբ ։ Եւ ասէր ուսուցանելով ի վարդապետութեան իւրում․ զգոյշ լերուք ի դպրաց անտի՝ որ կամին ի հանդերձս երևելիս շրջել, զնախողջոյնս խնդրել ի հրապարակս, և զնախաթոռս ի ժողովուրդս, և զգահաւորակս յընթրիս․ որ ուտեն զտունս այրեաց, պատճառանօք յերկարեալ զաղօթս, զի աւելի ևս դատաստանս ընկալցին ։ Կայր Յիսուս ընդդէմ գանձանակին, տեսանէր թէ զիա՛րդ ժողովուրդն արկանէր պղինձ ի գանձանակն․ և բազում մեծատունք արկին բազում ինչ․ եկն այրի մի՝ և արկ երկուս լումայս, որ է Նաքարակիտ մի ։ Եւ կոչեցեալ առ ինքն զաշակերտսն իւր ասէ ցնոսա․ ամէն ասեմ ձեզ․ զի այրին այն տնանկեալ՝ շատ արկ քան զամենեսեան որ արկին ի գանձանակն․ քանզի ամենեքին յաւելորդաց իւրեանց արկին, այլ Նա ի չքաւորութենէ իւրմէ զամենայն ինչ զոր ունէր արկ, գոյիւ չափ զկեանս իւր ։ 44 ։

Քարոզ․ Խնդրեսցուք ։ Կեցո ։ Աղօթ+․ Թագաւոր ։

---

# Է · ՈՒՐԲԱԹ · ԴԿ

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

### ՀԱՐՑ ԴԿ

Անըսկիզբըն Բանդ որ յանճառ յաթոռ նըստեալ ես. զքեզ տեսաք ի խաչին. վասն արարածոց քոց փըրկութեան ‖ Աստուած հարցըն մերոց: Զքեզ որ անքըննինդ ես յէութեանդ. ըսպասաւորին ապտակեալ. և զինուորըն գեղարդեամբըն խոցեալ. զանարատ ըզկողդ քո ի խաչին Աստուած: Որ թագաւորդ ես անմահ. զմեռանիլ յանձն առեր. և ըզթաղումն երեքօրեայ. վասն արարածոց քոց փըրկութեան Աստուած:

Գ. Ըզտէր օրհնեցէք ‖ Առաւօտուն բարձր արարէք ըզնա յաւիտեան: Զթագաւորըն Մեսիա և ըզխաչեալն ի մէջ ի յանօրինաց. և ըզլեղի դառնութեան ճաշակեալ վասըն մեր. առաւ: Անարատ զառն Աստուծոյ պատարագեալ. և ըզխոցումըն գեղարդեան առեալ ի կողն. և ըզփըրկական արիւնն եհեղ ի վերայ ամենայն տիեզերաց. առաւ:

### ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԴԿ

Որ զանճառելին ծնար սուրբ Աստուածածին: 103:

### ՈՂՈՐՄԵԱ ԴԿ

Վասըն մերոյ փըրկութեան խոնարհեցար ի յերկնից և ի կուսէն մարմնացար ‖ Աստուած Բանդ. ողորմեա մեզ: Ճըշմարտապէս մարմնացար և ընդ մարդկան շըրջեցար կատարեցեր զամենայն. և օրհնեցեր յառաջին յանիծիցն Աստուած: Քրիստոս Որդի Աստուծոյ ի մեռելոց յարուցեալ և ի յերկինըս համբարձար Աստուած:

### ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԴԿ

Փառք յարութեան քո Տէր: Խաչիլ ի յանձն

Digitized by Google

առեր զըծթած. եւ ըզմահ ճաշակեցեր. զամենեսեան յարուցեր զհաւատացեալսն ի քեզ որք ‖ աղաղակէին ասելով. փառք։ Վէմք պատառեցան ի խաչելութեան քո Տէր. եւ գերեզմանք բացան. դժոխք զարհուրեցան և մեռեալք յարուցեալ աղաղակէին։

Յարուցեալ է Տէրն ի գերեզմանէն ահեղակերպ փայլմամբ. պատառեցան վէմք. եւ երկիր սասանեցաւ. ի յահէ զբարբառոյ մեծ կարապետին։ Էջ հրեշտակն ի յերկնից ի գերեզմանն Տեառն. հընչեցուցանէր. ըզձայն ահեղ գոչման փողոյն ի վերայ գերեզմանին։ Իսկ եկեալ սուրբ կանանցն ի խընկել զմարմինն Տեառն. եւ լուեալ ի հրեշտակէն. եթէ յարեաւ ի մեռելոց կենդանին յաւիտենից։

ՍԱՂ. ԽԶ. ԿՑ. Համբարձաւ։ փխ. Ծափս։ 711։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու։ ԻԱ. 5.

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ յասել ոմանց զտաճարէն, թէ գեղեցիկ։ 278։

Քարոզ. Խնդրեսցուք։ Կեցո։ Աղօթ. Քում ամենազօր։

---

## ՑԵՐԵԿՈՅԻՆ

ՍԱՂ. ԽԶ. ԿՑ. Համբարձաւ։ փխ. Ծափս։ 711։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի։ ԻԳ. 1։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Յայնժամ խօսեցաւ (Յիսուս) ընդ ժողովուրդսն և ընդ աշակերտսն իւր և ասէ. յաթոռն Մովսիսի նստան դպիրքն և փարիսեցիք. զամենայն ինչ որ ասիցեն ձեզ՝ արարէք և պահեցէք, բայց ըստ գործոցն նոցա մի՛ առնէք, զի ասեն և ոչ առնեն։ Կապեն բեռինս ծանունս և դժուարակիրս, և դնեն ի վերայ ուսոց մարդկան, և մատամբ իւրեանց ոչ կամին շարժել զնոսա։ Եւ զամենայն գործս իւրեանց առնեն ի ցոյցս մարդկան. լայնեն զգրապանակս

իւրեանց, և երկայնեն զքղանցս հանդերձից իւրեանց. սիրեն զյառաջագահս ընթրիս և զնախաթոռս ի ժողովուրդս և զողջոյնս ի հրապարակս, և կոչել ի մարդկանէ՝ ռաբբի ռաբբի։ Բայց դուք մի՛ զոք կոչէք վարդապետ, զի մի է ձեր ուսուցիչ, և ամենեքին դուք եղբարք էք։ Եւ հայր մի՛ կոչէք ձեզ յերկրի, զի ձեր մի է հայր՝ որ յերկինսն է։ Եւ մի՛ կոչիցիք ուսուցիչք, զի ուսուցիչ ձեր Քրիստոս է։ Եւ մեծն ի ձէնջ եղիցի ձեր սպասաւոր։ Որ բարձրացուցանէ զանձն՝ խոնարհեսցի, և որ խոնարհեցուցանէ զանձն՝ բարձրասցի։ Վա՜յ ձեզ դպրաց և փարիսեցւոց կեղծաւորաց. զի փակէք զարքայութիւն երկնից առաջի մարդկան, դուք ոչ մտանէք, և որոց մտանենն՝ չտայք թոյլ մտանել։ (Վա՜յ ձեզ դպրաց և փարիսեցւոց կեղծաւորաց. զի ուտէք զտունս այրեաց. պատճառանօք երկարէք զաղօթս, վասն զի աւելի դատաստան ընդունիցիք։) Վա՜յ ձեզ դպրաց և փարիսեցւոց կեղծաւորաց. զի յածիք ընդ ծով և ընդ ցամաք՝ առնել եկամուտ մի, և յորժամ լինիցի՝ առնէք զնա որդի գեհենի կրկին ևս քան զձեզ։ Վա՜յ ձեզ, առաջնորդք կոյրք, զի ասէք՝ որ երդնու ի տաճարն՝ չէ ինչ, բայց որ երդնու յոսկին որ ի տաճարին է՝ արժան է։ Մորոսք և կոյրք, զի՞նչ մեծ է, ոսկի՞ն՝ եթէ տաճարն որ սրբէ զոսկին։ Եւ որ երդնու ի սեղանն՝ չէ ինչ, բայց որ երդնու ի պատարագն որ ի վերայ նորա է՝ արժան է։ Յիմարք և կոյրք, զի՞նչ մեծ է. պատարա՞գն, եթէ սեղանն՝ որ սրբէ զպատարագն։ Իսկ արդ որ երդուեալ ի սեղանն, երդնու ի նա և յամենայն որ ի վերայ նորա է. և որ երդուեալ ի տաճարն, երդնու ի նա և ի բնակիչն նորա. և որ երդուեալ յերկինս, երդնու յաթոռն Աստուծոյ և յայն որ նստին ի վերայ նորա։ Վա՜յ ձեզ դպրաց և փարիսեցւոց կեղծաւորաց. զի տասանորդէք զանանուխ և զսամիթ և զչաման, և թողէք զծանր ծանր օրինացն՝ զդատաստան և զողորմութիւն և զհաւատս. զայս արժան էր առնել՝ և զայն չթողուլ։ Առաջնորդք կոյրք, որ զմժղուկս քամէք և զուղտս կլանէք։ Վա՜յ ձեզ դպրաց և փարիսեցւոց կեղծաւորաց. զի սրբէք զարտաքին զբաժակին և զսկաւառակին, և ի ներքոյ լի են յափշտակութեամբ և անիրաւութեամբ։ Փարիսեցի կոյր, սրբեա նախ զներքին բաժակին և զսկաւառակին, զի լինիցի և արտաքինն նոցա

տուրբ ։ Վա՜յ ձեզ դպրաց և փարիսեցւոց կեղծաւորաց . զի նման էք գերեզմանաց բռելոց , որ արտաքոյ երևին գեղեցիկք , և ի ներքոյ լի են ոսկերօք մեռելոց և ամենայն պղծութեամբ ։ Նոյնպէս և դուք արտաքոյ երևիք մարդկան արդարք , և ի ներքոյ լի էք կեղծաւորութեամբ և անօրէնութեամբ ։ Վա՜յ ձեզ դպրաց և փարիսեցւոց կեղծաւորաց . զի շինէք զշիրիմս մարգարէից , և զարդարէք զգերեզմանս արդարոց , և ասէք , եթէ էաք յաւուրս հարցն մերոց՝ ոչ հաղորդէաք արեան մարգարէիցն . ապա ուրեմն վկայէք զանձանց՝ եթէ որդիք էք այնոցիկ՝ որ կոտորէին զմարգարէսն . և դուք լցէք զչափ հարցն ձերոց ։ Օձք՝ ծնունդք իժից , զիա՞րդ փախնուցուք ի դատաստանէ գեհենին ։ Վասն այդորիկ ահաւասիկ ես առաքեմ առ ձեզ մարգարէս և իմաստունս և դպիրս , և ի նոցանէ սպանանիցէք և ի խաչ հանիցէք , և ի նոցանէ տանջիցէք ի ժողովուրդս ձեր , և հալածիցէք ի քաղաքէ ի քաղաք ։ Որպէս զի եկեսցէ ի վերայ ձեր ամենայն արիւն արդար հեղեալ յերկրի , յարենէն Աբելի արդարոյ մինչև ցարիւնն Զաքարիայ որդւոյ Բարաքեայ՝ զոր սպանէք ընդ մէջ տաճարին և սեղանոյ . ամէն ասեմ ձեզ , եկեսցէ այն ամենայն ի վերայ ազգիս այսորիկ ։ Երուսաղէ՜մ Երուսաղէմ , որ կոտորէիր զմարգարէս և քարկոծ առնէիր զառաքեալսն առ քեզ . քանիցս անգամ կամեցայ ժողովել զմանկունս քո զոր օրինակ ժողովէ հաւ զձագս իւր ընդ թևովք , և ոչ կամեցարուք ։ Ահա թողեալ լիցի ձեզ տունդ ձեր աւերակ ։ Բայց ասեմ ձեզ , թէ ոչ ևս տեսանիցէք զիս յայսմ հետէ , մինչև ասիցէք՝ օրհնեալ եկեալն յանուն Տեառն ։ 39 ։

ՀԱՄԲԱՐՁԻ ԴՁ

Որք տնկակից եղաք նմանութեան մահու ։ 718 ։

Համբարձաւ Տէրն մեր Քրիստոս ։ Եբէ+ փոխ. 707 ։

ՍԱՂ . ԻԳ . ԿՑ . Համբարձէք ։ փխ . Տեառն է ։ 715 ։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մարկոսի ։ ԺԳ . 1 ։

Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի

Եւ յելանելն (Նորա) ի տաճարէ անտի , ասէ ցնա ։ 257 ։

Քարոզ . Խնդրեսցուք ։ Կեցո ։ Աղօթ+ . Թագաւոր ։

---

լոյս մեղօք . զանձն իմ մխիթարեա ողոր ։ Որ ըզդատականք մահու լուծեր . զնախաստեղծին . զդա-տապարտեալս լոյս մեղօք . զհոգիս իմ նորոգեա ող ։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԴԿ

Փառք Քրիստոսի ամենազօր յարութեանն ։

Քրիստոսի ամենազօր յարութեանն երկրպագեն քե-րովբէքն . և վեցթեւեանն սերովբէքըն հոգեւորական հընչմամբ երգեն ասելով . փառք ։ Այսօր անուշահոտ բուրմամբ ընթանային սուրբ կանայքն . տեսանելով ըզհրեշտակն արեգակնակերպ փայլմամբ ի վերայ վիմին գոչէր ասելով . փառք ։ Այսօր արձակեցաք ի կապա-նաց նախահօրն . և վերըստին նորոգմամբ յաւիտե-նական կենացն եղաք ժառանգորդք . փառք ։

Ի լուսաբերից կանանցն եկեալ . ի սուրբ գե-րեզմանն . եւ զահաւոր ըզհրեշտակապետին ըզ-ձայնըն լուեալ . ո սմ րք զխաչեցեալըն խընդը-րէք յարուցեալ Քրիստոս . անըմահ է թա-գաւորն ։ Արփիահրաշ լոյս մեծ ծագեալ . ի սուրբ գերեզմանն . եւ զարհուրեալ պահապանացն եր-կիւղալից ըմբռանէին . այլ քաջ զհրեշտակապետին որ գոչէր առ կանայսն . ո ։ Ընթացեալ Պետրոս և Յովհաննէս . ի սուրբ գերեզմանն . եւ համդիպեալ վարշամակին եւ սուրբ կտաւոցն . այլ քաջ զհրեշտակապետին որ գոչէր առ նոսա . ո ։

ՍԱՂ . ԽԶ . ԿՑ . Համբարձաւ ։ Փխ . Ծափս ։ 711 ։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու ։ ԻԲ . 1 ։

ԶՏէրն մեր Յիսուս Քրիստոս

Մերձեցաւ տօն բաղարջակերացն՝ որ կոչէր պասքա ։ Եւ խնդրէին քահանայապետքն և դպիրք՝ թէ որպէս սպանանիցեն զնա , բայց երկնչէին ի ժողովրդենէ ան-

Digitized by Google

տի ։ Ապա եմուտ սատանայ ի Յուդա ի կոչեցեալն
Իսկարիովտացի, որ էր ի Թուոյ երկոտասանիցն ։ Զոգու-
եդ բանս ընդ քահանայապետսն եւ ընդ գլխօս եւ ընդ
իշխանս ժողովրդեանն, զի մատնեսցէ զնա նոցա ։ Եւ
խնդացին, եւ խոստացան տալ նմա արծաթ . եւ յանձն
առ, եւ խնդրէր պարապ մատնել զնա նոցա՝ մեկուսի
յամբոխէն ։ Եկն օր բաղարջակերացն, յորում օրէն էր
զենուլ զպասեքն . եւ առաքեաց զՊետրոս եւ զՅովհաննէս
եւ ասէ . երթայք պատրաստեցէք մեզ զպասեքն զի կե-
րիցուք ։ Եւ նոքա ասեն . ո՞ւր կամիս զի պատրաստես-
ցուք ։ Եւ ասէ ցնոսա . ահա իբրեւ մտանիցէք ի քաղա-
քըն, պատահեսցէ ձեզ այր մի բարձեալ սափոր ջրոյ .
երթիջիք զհետ նորա ի տունն յոր մտանիցէ, եւ ասասջիք
ցտանուտէր տանն . վարդապետ ասէ քեզ, ո՞ւր են
վանքն իմ՝ յորում զպասեքն ուտիցեմ աշակերտօք
հանդերձ . եւ նա ցուցցէ ձեզ վերնատուն մի մեծ զար-
դարեալ, եւ անդ պատրաստեսջիք ։ Եւ գնացեալ գտին
որպէս եւ ասացն նոցա եւ պատրաստեցին զպասեքն ։ Եւ
իբրեւ ժամ եղեւ՝ բազմեցաւ, եւ երկոտասան առաքեալքն
ընդ նմա ։ Եւ ասէ ցնոսա . ցանկանալով ցանկացայ
զայս պասեք ուտել ընդ ձեզ՝ մինչ չեւ չարչարեալ իցեմ .
Բայց ասեմ ձեզ, թէ ոչ եւս կերայց ի սմանէ, մինչեւ
լցցի յարքայութեան Աստուծոյ ։ Եւ ընկալեալ բաժակ
գոհացաւ եւ ասէ . առէք զայդ եւ բաժանեցէք ի ձեզ ։ Ա-
սեմ ձեզ, թէ յայսմ հետէ ոչ արբից ի բերոյ որթոյ
մինչեւ եկեսցէ արքայութիւն Աստուծոյ ։ Եւ առեալ հաց
գոհացաւ, եբեկ եւ ետ նոցա եւ ասէ . այս է մարմին իմ,
որ վասն բազմաց տուեալ . զայս արասջիք առ իմոյ յի-
շատակի ։ Նոյնպէս եւ զբաժակն յետ ընթրեացն առ եւ
ասէ . այս բաժակ է նոր ուխտ իմով արեամբ վասն ձեր
հեղլոյ ։ Բայց ահաւասիկ ձեռն մատնչի իմոյ ընդ իս ի սե-
ղանս . եւ որդի մարդոյ ըստ սահմանելոյն երթայ, բայց
վա՜յ մարդոյն այնմիկ յոյր ձեռն մատնիցի ։ Եւ նոքա
սկսան խնդրել ընդ միմեանս, թէ ո՞վ է ի նոցանէ որ
զայն գործելոց իցէ ։ Եղեւ եւ հակառակութիւն ի մէջ նո-
ցա, թէ ո՞վ ի նոցանէ համարիցի մեծ ։ Եւ նա ասէ
ցնոսա . թագաւորք ազգաց տիրեն նոցա, եւ որ իշխենն
նոցա՝ բարերարք կոչին . այլ դուք ոչ այնպէս . այլ որ
մեծն է ի ձեզ՝ եղիցի իբրեւ զկրտսերն, եւ առաջնորդն

Digitized by Google

իբրև զսպասաւորն։ Ո՞վ է մեծ, բազմեա՞լն՝ եթէ սպասաւորն. ո՞չ ապաքէն բազմեալն. բայց ես եմ ի միջի ձերում իբրև զսպասաւոր։ Եւ դուք էք՝ որ ցանգ կայիք ընդ իս ի փորձութիւնս իմ. և ես ուխտեմ ձեզ՝ որպէս և Հայր իմ ուխտեաց ինձ զարքայութիւն. զի ուտիցէք և ըմպիցէք ի սեղան իմ յարքայութեանն իմում, և նստիցիք յերկոտասան աթոռ՝ դատել զերկոտասան ազգ Իսրայելի։ 30։

Քարոզ. Խնդրեսցուք։ Կեցո։ Աղօթք. Քում ամենազօր։

---

## ՅԵՐԵԿՈՅԻՆ

ՍԱՂ. ԽԶ. ԿՑ. Համբարձաւ։ ՓԽ. Ծափս։ 711։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի։ ԻԴ. 1։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ ելեալ արտաքս (Յիսուս) ի տաճարէն գնայր։ 370։

Լոյս զուարթ

ՄԽՍԵԴԻ Գողթնեան

Օրհնեալ որ գաս յանուն Տեառն, օրհնեալ որ գալոց ես։

Տէր Աստուած մեր երևեցաւ մեզ, արարէք տօնս ուրախութեան կանխաւ մինչև յանկիւնս սեղանոյ։

Քարոզ յառնօրէս Պենտակոստէի յառաւօտուն և յերեկոյի

Ասասցուք։

Ձայնի Սուրբ Աստուածէն շփեննուն ծիածան և յարդեան ելանեն խաղը և աւետարանաւ և մարգարէով և ամենայն շարականք։

ՀԱՄԲԱՐՁԻ ԴԶ

Առաքելոյ աղաւնոյ։ Կենդանարար Աստուած։ 763։

ՍԱՂՄՈՍ ԺԽԲ

ԿՑ. Հոգի քո բարի առաջնորդեսցէ ինձ յերկիր ուղիղ։

ՓԽ. Տէր լուր աղօթից իմոց, ունկն դիր խնդրուածաց իմոց ճշմարտութեամբ քով։

Լուր ինձ արդարութեամբ քով, և մի մտաներ ի դատաստան ընդ ծառայի քում, զի ոչ արդարանայ առաջի քո ամենայն կենդանի։

Հալածեաց թշնամին զանձն իմ, խոնարհ արար յերկիր զկեանս իմ. և նստոյց զիս ի խաւարի որպէս մեռեալ յաւիտենից։

Ձանձրացաւ յիս հոգի իմ, և սիրտ իմ խռովեցաւ յիս։

Յիշեցի զաւուրսն զառաջինս, խորհեցայ յամենայն ի գործս քո. յարարածս ձեռաց քոց խորհեցայ, և համբարձի առ քեզ զձեռս իմ։

Անձն իմ որպէս երկիր ծարաւի է առ քեզ. վաղվաղակի լուր ինձ Տէր, զի նուաղեաց յինէն հոգի իմ։

Մի դարձուցաներ զերեսս քո յինէն, նմանիցեմ այնոցիկ որ իջանեն ի գուբ։

Լսելի արա ինձ առաւօտուց զողորմութիւնս քո, զի ես ի քեզ Տէր յուսացայ։

Ցոյց ինձ ճանապարհ յոր գնացից, զի առ քեզ Տէր համբարձի զանձն իմ։

Փրկեա զիս ի թշնամեաց իմոց Տէր, զի զքեզ ապաւէն ինձ արարի։

Ուսո ինձ առնել զկամս քո, զի դու ես Աստուած իմ։

Հոգի քո բարի առաջնորդեսցէ ինձ ի յերկիր ուղիղ։

Վասն անուան քո Տէր կեցուսցես զիս արդարութեամբ քով, հանցես ի նեղութենէ զանձն իմ։

Ողորմութեամբ քով սատակեսցես զթշնամիս իմ. և կորուսցես զամենայն նեղիչս անձին իմոյ, զի ես ծառայ քո եմ։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մարկոսի ։ ԺԴ. 1 ։

Վասն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի

Եւ էր զատիկն և բաղարջակերք յետ երկուց ։ 434 ։

Քարոզ. Գոհաբանելով ։ Կեցո ։ Աղօթ. Խաղաղութեամբ ։

# ԿԻՒՐԱԿԷ· ԱԿ
# ՊԵՆՏԵԿՈՍՏԷ

## Ի ԳԻՇԵՐԻ

### ՀՈՏՆԻԱԿ ՇԱՐԱԿԱՆ ԲԿ

Երրորդութիւնն անբաժանելի եւ զօրութիւն երկնային լոյս ծագեալ յաշխարհ. ‖ Նմա հանցուք զօրհնութիւնս երգով: Որ էջերն յերկնից. այսօր եւ հանգեաւ յառաքեալսն երջանիկ սուրբ Հոգին. Նմ: Որ ի խորհուրդս փրկական. այսօր ընդ իջանել յառաքեալսն ծանուցաւ մարգարէին. Նմ:

Քար. Եւ ես խաղ: Քահ. Օրհնութիւն: Եւ այլ

### ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԴՁ

Առաքելոյ աղաւնոյ. իջանելով մեծաձայն հնչմամբ ի բարձանց. ի նմանութիւն լուսոյ փայլման հրագինեաց անկիզելի զաշակերտսն. մինչդեռ նստէին ի սուրբ վերնատանն: Աննիւթական աղաւնի. անքննելի որ քննէ ըզխորս Աստուծոյ. զոր առեալ ի Հօրէ պատմէ զահաւոր և ըզմիւսանգամ գալստեան. զոր քարոզեցին համազօրական: Օրհնութիւն ի բարձունս. ելողին ի Հօրէ Հոգւոյն սրբոյ. որով առաքեալքն արբեցան անմահական բաժակաւն. եւ հրաւիրեցին զերկիրս ի յերկինս:

† Կենդանարար Աստուած մարդասէր Հոգի. ընդժողովեալսն միաբանական սիրով. լուսաւորեցեր հրեղինօք լեզուօք. ‖ Վասն որոյ եւ մեք այսօր տօնեմք ըզգալուստ քո սուրբ: Զուարճացան քո գալստեամբն սուրբ առաքեալքն. կոչելով ի միասին ըզցրուեալսն ի միմեանց բազմաձայն լեզուօք. վասն:

Digitized by Google

Անմահաբար բաժակ հեղեալ յերկնից սուրբ Հոգի. զոր արբին ի վերնատունըն դասք սուրբ առաքելոյն. ‖ օրհնեալ ես սուրբ Հոգիդ ճըշմարիտ։ Առատատուպէս ծաւալեալ ի մեզ հուրըն կենդանի. քանզի արբեալ առաքելոցն եւ արբուցին տիեզերաց. օրհնեալ։ Այսօր մեծապէս ցընծան եկեղեցիք հեթանոսաց. ըզմայլեալք ուրախութեամբ ի քէն կենդանարար բաժակ. օրհնեալ։

Հոգին սուրբ. էր միշտ և է եւ եղիցի. ոչ սկըսեալ եւ ոչ դադարեսցի. այլ ‖ միշտ ընդ Հօր և ընդ Որդւոյ կարգեալ և թըւեալ եւ միշտ օրհնեալ է ի յաւիտեան։ Էր միշտ ընդունող. սըրբող և լըցուցիչ աստուածացուցիչ. եւ միշտ։ Մըշտաշարժ ինքնաշարժ. ինքնիշխան ինքնազօր ամենազօր. վարըն զի շընչէ ուր կամի. յորքան ախորժէ. յորժամ և յորքան եւ միշտ։

ՀՄ. Համբարձաւ Տէրըն մեր Քրիստոս. օրհնութեամբ ընդ ամպս երկնից. եւ առաքելոցն երկըրպագեալ դարձան յԵրուսաղէմ. միաբանութեամբ վերատաքէին զաղօթս։ Մըտեալ ի յերկինըս բիւրաւոր զօրօք բազմութեամբ հրեշտակաց. որք աղաղակէին եւ ասէին. օրհնեալ եկեալ ի յանուն Տեառն։ Նըստեալ ընդ աջմէ ծընողին. կատարելով ըզխոստացեալ պարգեւս. մըխիթարիչ սուրբ Հոգին զայ առ ձեզ. աղբերացուցանել զմեծ զողորմութիւն։

ՀՆ. Ժամանակ դարձի իմոյ եհաս ի յերկիր. ‖ արդ Տէր ընկալ ըզծառայս քո. եւ Հոգի քո բարի առաջնորդեսցէ ինձ ի յերկիր ուղիղ։ Խոստովանող Հոգին որ ելից զունայնութեան ընթացս աշխարհի. արդ։ Ի վերընտունն աւուր մեծի յորժամ առնէր այցելութիւն

քոյոց սիրողաց յայնժամ խնայեա ի ծառայս քո. եւ Հոգի :

ՄԾ. Նոր Սիոնի ծընեալ մանկունք ուրբ աւազանաւն. շնորհազարդեալք Հոգւովն Աստուծոյ. օրհնեցէք զՀայրն երկնաւոր յաւուր ծնընդեան սըրբուհւոյ կուսին. || յոր օրհնեցայք յանիծից նախնոյն : Արեամբ Գառինն անարատի փըրկեալ ժողովուրդք. յաւուր ծնընդեան մօր անստանելոյն. գովեցէք ըզՄիածինն որ հանեցաւ առնուլ մարմին անսերմն ի նմանէ. յոր : Յառատաբուղխ շնորհաց Հոգւոյն լուսազարդեալ ազգք հեթանոսաց. յաւուր ծնընդեան մօր Բանին ծնողի. ըզփառակից Որդւոյ զՀոգին բարեբանեցէք հոգեւոր երգով. որ մաքրազարդեաց զմարմնաւորն Որդւոյն :

ՅՈՎ. Ըզքեզ որ Հոգւով եւ հըրով մաքրեցեր ըզմարդկան աղտեղութիւն. որպէս զԱստուած եւ ըզփըրկիչ ամենեքեան օրհնեսցուք : Փըրկիչն երեւեցաւ եւ զաշխարհս ապրեցոյց ի պատրանաց Թըշնամւոյն. որդեգրութիւն շնորհելով ի ձեռըն մըկըրտութեան : Ջրով կիզու ըզմեղըս մեր այսօր. երեւեալ ապրեցուցիչն եւ զովացուցանէ զաշխարհս աստուածային Հըրովն :

ՄԾ. Թագաւոր փառաց Աստուած Հոգիդ կենդանարար. որ շնորհաբաշխ աւուր մեծի ծնընդեան Մարիամու դըստեր Դաւթի Թագաւորին. նորոգեա զկենդանութիւն մերոյ Թագաւորին. զի օրհնեսցուք ըզքեզ Տէր այժմ եւ յաւիտեան : Աղբիւր կենաց եւ փըրկութեան մերոյ Հոգի Հօր եւ Որդւոյ. ի յարմատոյն Յեսսեայ բըղխման զաւազանի հասեալ ժամուդ. շնորհազարդ պայծառացո զգաւազան իշխանութեան մերոյ հայ-

Digitized by Google

րապետի... զի՛ օրհնեսցուք ըզքեզ Տէր այժմ և յաւիտեան։ Լոյսն աշխարհի և ճառագայթ իմանալի Հոգեկդ սուրբ Աստուծոյ. ի ցընծութեան աւուր լուսման ուրախութեան Յովակիմայ և Աննայի... աղօթիւք սոցա լցո զպէտս կարեաց հայաստանեայց եկեղեցւոյ... զի։

ԽՁ. Որ համաստեղծեր բանիւ զեկեղեցի քո Քրիստոս ի վերայ առաքելական վիմի. երգել ի սմին զերգս հոգեւորս։ Կանգնեալ ի սմա սեղան սրբութեան. բաշխէ զմարմին իւր և զարիւն. և տայ ի սմանէ մեզ նորոգութիւն. ի թողութիւն մեղաց մերոց։ — Փառք Հօր։ Իջեալ Հոգւոյն սրբոյ. աղաւնակերպ երեւմամբ. ի վերայ մարմնոյ և արեանն Տեառն. ի բժշկութիւն հոգւոց մերոց։

— Այժմ և միշտ։ Հոգեւորական սուրբ մեկնութեամբ. զարդարեցեր նոքօք ըզտիեզերս ի գեղեցկաշուք լուսափայլ և նորափետուրս. վասն որոյ և մեք այսօր տօնեմք ըզգալուստ քո սուրբ։

Ալէլուիա յօրհնութեան Պենտակոստէի է Գալստեան Հոգւոյն ――։

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԱՁ

Զհոգւոյն ըզգալուստն տօնեմք որ մխիթարեաց զառաքեալսն հանգչելով ի նոսա հրեղէն լեզուօք. Օրհնեալ է յաւիտեան։ Զերեւումն Հոգւոյն տօնեմք վերաբերեալ Աստուած խոստովանիմք նորոգող և կենդանարար. օրհնեալ է։ Այսօր ուրախացեալք Հոգւովս. խոստովանիմք Աստուած զՀոգին սուրբ բղխումն և լցուցիչ զամենայն. օրհնեալ է։

Գ. ԸզՏէր Օրհնեցէք։ ... բարձր

արարէք ընդ նմա յաւիտեան։ Զելողըն ի Հօրէ զէա-կից Որդւոյ. սուրբ զՀոգին օրհնեմ։ Զեկեալըն այսօր Աստուած. հրեղինօք լեզուօք առ բանն ընտրութեան օրհընեմ։

ՄԵԾԱՑՈՒՑԷ ԱՁ

Այսօր ընտիր ժողովուրդք. ցընծացէք. ընդ գալըստ Հոգւոյն սրբոյ. ‖ մեծացուցանեմք. զելողըն ի Հօրէ։ Այսօր ցընծան առաքեալքն. զարդարեալք ի շնորհացն Հոգւոյն սրբոյ. մեծա։ Այսօր ըզուարճացան արարածք. ճըշմարիտ գալըստեամբ Հոգւոյն սրբոյ. մեծա։

Դէշէրէ

Իջեալ Հոգին յառաքեալսն. եւ հրազինեաց զըն-տրեալսն անկէզ ի սուրբ վերնատունն։ Եւ հան-գեաւ նոքօք յազգըս մարդկան զանազան լեզուաց բա-ժանմամբ։

ՈՂՈՐՄԵԱ ԱՁ

Որ յամենայնի ես աստուածութիւն. եւ ի ձայն հընչ-ման իջեր յերկնից սուրբ Հոգի. ‖ ողորմեա մեզ։ Որ զամենայն լընուս զօրութեամբ քո. եւ ի դասս առա-քելոցն իջեր բընակիլ սուրբ Հոգի. ողորմեա։ Որ ան-բաժանելի ես յաստուածութեան. եւ ի հրեղէն լեզուս բաժանեալ հանգեար յառաքեալսըն սուրբ Հոգի. ո-ղորմեա։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԱՁ

Որ ի քրովբէական կառսըդ հանգչիս. այսօր ի-ջեր յերկնից ի դասս առաքելոցըն սուրբ Հոգի. ‖ օրհ-նեալ ես թագաւոր անման։ Որ գընաս ի վերայ թեւոց հողմոց. այսօր ի հրեղէն լեզուս բաժանեալ հանգեար յառաքեալսըն սուրբ Հոգի. օրհնեալ։ Որ խնամես տես-

չութեամբ զքո զմրամրանձս. այսօր եկեր ի հաստատել զեկեղեցի քո սուրբ Հոգի. օրհնեալ ես Թագաւոր անմահ:

Ժողովեալ ընտրելոց մետասանիցն. սպասեալ մընային աւետեացն Հօր հաւատով ի վերնատանն: Սուրբ Հոգին երեւեալ սրբոցն. լեցոյց խընդութեամբ սուրբ զառաքեալսն հաւատով ի վերնատանն: Որք արբին ըզհուրըն կենդանի. եւ ընթացեալ արբուցին տիեզերաց. որք արբինըն կենդանացան:

Ա[illegible] Երգ յա[illegible] Պենտեկոստէի [illegible]:

Զգալուստ Հոգւոյն օրհնեսցուք, զՀոգւոյն սրբոյ օրհնեսցուք զգալուստ:

Եկեղեցիս բարեբանեսցէք զԱստուած, և զՏէր յաղբերացն Իսրայէլի:

Զկնի Սուրբ Աստուածն [illegible], եւ ի[illegible] [illegible] [illegible] [illegible] է [illegible]

ՇԱՐԱԿԱՆ ԴՋ

Առաքելոյ աղաւնոյ իջանելով մեծա: Երգ[illegible]: 76[illegible]:

Աղ. ՍԱՂՄՈՍ ՃԽԲ. է [illegible]

ԿՑ. Հոգի քո բարի առաջնորդեսցէ ինձ ի յերկիր ուղիղ:

Փխ. Տէր լուր աղօթից իմոց, ունկն դիր: 761:

Ալէլուիա ալէլուիա:

ԸՆԹԵՐՑՈՒԱԾ Ի ԳՈՐԾՈՑ ԱՌԱՔԵԼՈՑ: Բ. 1:

Եւ ի կատարել աւուրցն պենտակոստէից՝ էին ամենեքեան միաբան ի միասին: Եւ եղեւ յանկարծակի հնչիւն յերկնից՝ եկեալ իբրեւ սաստիկ հողմոյ, եւ ելից զամենայն տունն յորում նստէին. եւ երեւեցան նոցա բաժանեալ լեզուք իբրեւ ի հրոյ, եւ նստաւ իւրաքանչիւր ի վերայ նոցա: Եւ լցան ամենեքեան Հոգւով սրբով, եւ սկսան խօսել այլ լեզուս՝ որպէս եւ Հոգին տայր բարբառել նոցա. Եւ էին յԵրուսաղէմ բնակեալ Հրեայք՝ արք երկիւղածք, յամենայն ազգաց որ ի ներքոյ երկնից: Եւ իբրեւ եղեւ

բարբառս այս, եկն միաբան բազմութիւնն և խռնեցաւ. զի լսէին յիւրաքանչիւր լեզուս խօսել նոցա։ Աքանչանային ամենեքեան և զարմանային և ասէին ընդ միմեանս. ո՞չ աւասիկ ամենեքեան սոքա որ խօսին՝ Գալիլեացիք են, և զիա՞րդ լսեմք մեք յիւրաքանչիւր բարբառս մեր՝ յորում ծնեալ եմք։ Պարթևք և Մարք և Իլամացիք, և որ բնակեալ են ի Միջագետս, ի Հրէաստանի և ի Գամիրս, ի Պոնտոս և յԱսիա, ի Փռիւգիա և ի Պամփիւլիա, յԵգիպտոս և ի կողմանս Լիբէացւոց, որ ընդ Կիւրենացիս և որ եկք Հռոմայեցիք, Հրեայք և եկք նոցուն, Կրետացիք և Արաբացիք, լսեմք խօսից նոցա ի մեր լեզուս զմեծամեծս Աստուծոյ։ Աքանչանային ամենեքեան զարմացեալք և ասէին ցմիմեանս. զի՞նչ կամիցի այս լինել։ Եւ կիսոցն ընդ խաղ արկեալ ասէին, եթէ քաղցուալից իցեն։ Յարուցեալ Պետրոս հանդերձ մետասանիւքն, ամբարձ զձայն իւր և խօսեցաւ ընդ նոսա. արք Հրէաստանեայք, և որ բնակեալ էք յԵրուսաղէմ ամենեքեան, այս ձեզ յայտնի լիցի և ունկն դիք բանից իմոց. ոչ որպէս դուք կարծէք՝ թէ սոքա արբեալ իցեն. զի դեռ երեք ժամք են աւուրս։ Այլ այս է որ ասացաւ ի ձեռն մարգարէին Յովելայ. Եւ եղիցի յետ այսորիկ յաւուրս յետինս, ասէ Աստուած, հեղից յոգւոյ իմմէ ի վերայ ամենայն մարմնոյ, և մարգարէասցին ուստերք ձեր և դստերք ձեր. և երիտասարդք ձեր տեսիլս տեսցեն, և ծերք ձեր երազովք յերազեսցին. և ի վերայ ծառայից իմոց և ի վերայ աղախնանց իմոց յաւուրսն յայնոսիկ հեղից յոգւոյ իմմէ, և մարգարէասցին։ Եւ տաց նշանս յերկինս ի վեր, և նշանս յերկիր ի խոնարհ, արիւն և հուր և մրրիկ ծխոյ. արեգակն դարձցի ի խաւար և լուսին յարիւն, մինչ չև եկեալ իցէ օր Տեառն մեծ և երևելի։ Եւ եղիցի ամենայն որ կարդասցէ զանուն Տեառն՝ կեցցէ։ 21։

Ջայնի— Ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա.

Հոգի քո բարի առաջնորդեսցէ ինձ ի յերկիր ուղիղ։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Յովհաննու։ ԺԴ. 15։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս ասէ.

Եթէ սիրէք զիս՝ զպատուիրանս իմ պահեսջիք. և ես աղաչեցից զՀայր, և այլ մխիթարիչ տացէ ձեզ, զի ընդ



Digitized by Google

ձեզ բնակեսցէ ի յաւիտեան. զՀոգին ճշմարտութեան, զոր աշխարհս ոչ կարէ ընդունել, զի ոչ տեսանէ զնա և ոչ ճանաչէ զնա. բայց դուք ճանաչէք զնա, զի առ ձեզ բնակեսցէ, և ընդ ձեզ եղիցի: Ոչ թողից զձեզ որբս, գամ առ ձեզ. փոքր միւս ևս, և աշխարհս ոչ ևս տեսանէ զիս. բայց դուք տեսանիցէք զիս. զի ես կենդանի եմ, և դուք կենդանի լինելոց էք: Յայնմ աւուր գիտասջիք դուք, զի ես ի Հօր իմում, և դուք յիս, և ես ի ձեզ. որ ունի զպատուիրանս իմ և պահէ զնոսա, նա է որ սիրէ զիս. և որ սիրէն զիս՝ սիրեսցի ի Հօրէ իմմէ. և ես սիրեցից զնա, և երևեցուցից նմա զիս: Ասէ ցնա Յուդա՝ ոչ Սկարիովտացին. Տէր, զի՞ եղև՝ զի մեզ յայտնելոց ես զքեզ՝ և ոչ աշխարհի: Պատասխանի ետ Յիսուս և ասէ ցնա. եթէ ոք սիրէ զիս՝ զբանն իմ պահեսցէ, և Հայր իմ սիրեսցէ զնա. և առ նա եկեսցուք, և օթևանս առ նմա արասցուք. և որ ոչն սիրէ զիս՝ զբանս իմ ոչ պահէ. և բանն իմ զոր լսէք՝ ոչ է իմ, այլ Հօրն՝ որ առաքեացն զիս: 24:

Քարոզէ Սարկաւագն. Եւ ևս խաղ: Վասն ի վերուստ: Եւ փառաւորեցին զանդրանիկն և զաշխարհ:

Աղօ. Քար. Սուրբ խաչիւս: Աղօթք. Պահպանեա:

Եւ է տաւնան յեկեղեցին, ասեն

ՇԱՐԱԿԱՆ ԲԿ

Երրորդութիւնն անբաժանելի և զօրութիւն: 763:

Ջկնք. Նորաստեղծ: Քար. Խնդր: Կեցո: Աղ. Քում ամ:

---

ՅԵՐԵԿՈՅԻՆ

Ի տուն ժամու ժողովքն է տաւնան եկեղեցւոյն. և ասեն

ՍԱՂՄՈՍ ՃԽԲ. է ՌԻ

ԿՑ. Հոգի քո բարի: Փխ. Տէր լուր աղօթից: 761:

Ընթերցուած ի գործոց առաքելոց: Բ. 1:

Եւ ի կատարել աւուրցն պենտակոստէից՝ էին: 768:

Ջայնէ Ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա.

Հոգի քո բարի առաջնորդեսցէ ինձ ի յերկիր ուղիղ:

Սրբոյ Աւետարանին որ ըստ Յովհաննու: ԺԵ. 26:

Տէրն մեր Յիսուս Քրիստոս ասէ.

Բայց յորժամ եկեսցէ մխիթարիչն, զոր ես առաքեցից

Digitized by Google

ձեզ ի Հօրէ, զՀոգին ճշմարտութեան որ ի Հօրէ ելանէ, Նա վկայեսցէ վասն իմ. և դուք վկայէք, զի ի սկզբանէ ընդ իս էք: Զայս խօսեցայ ընդ ձեզ՝ զի մի՛ գայթագղեսջիք. ի ժողովրդոց իւրեանց հանիցեն զձեզ: Այլ եկեսցէ ժամանակ, զի ամենայն որ սպանանիցէ զձեզ՝ համարիցի պաշտօն մատուցանել Աստուծոյ: Եւ զայն արասցեն ընդ ձեզ, քանզի ոչ ծանեան զՀայր և ոչ զիս: Այլ և զայս խօսեցայ ընդ ձեզ, զի յորժամ եկեսցէ ժամանակ՝ յիշիցէք՝ թէ ես ասացի ձեզ: Զայս ի սկզբանէ ոչ ասացի ձեզ, քանզի ընդ ձեզ էի: Բայց արդ երթամ ես առ առաքիչն իմ, և ոչ ոք ի ձէնջ հարցանէ ցիս՝ թէ յո՛ երթաս. այլ զի զայս խօսեցայ ընդ ձեզ, տրտմութիւն ելից զսիրտս ձեր: Այլ ես զճշմարիտն ասեմ ձեզ. լաւ է ձեզ եթէ ես երթամ. զի եթէ ես ոչ երթայց՝ մխիթարիչն ոչ եկեսցէ առ ձեզ. ապա եթէ երթամ, առաքեցից զնա առ ձեզ: Եւ Նա եկեալ յանդիմանեսցէ զաշխարհ վասն մեղաց, և վասն արդարութեան, և վասըն դատաստանի: Վասն մեղաց, զի ոչ հաւատան յիս. վասն արդարութեան, զի առ Հայր իմ երթամ, և ոչ ևս տեսանէք զիս. վասն դատաստանի, զի իշխան աշխարհիս այսորիկ դատապարտեալ է: Եւս բազում ինչ ունիմ ասել ձեզ, այլ ոչ կարէք հանդարտել այժմիկ. յորժամ եկեսցէ Նա Հոգին ճշմարտութեան, առաջնորդեսցէ ձեզ ամենայն ճշմարտութեամբ. զի ոչ եթէ յանձնէ ինչ խօսիցի, այլ զոր լսիցէ խօսեսցի, և զգալոցն պատմեսցէ ձեզ: Նա զիս փառաւորեսցէ, զի յիմմէ անտի առնուցու և պատմեսցէ ձեզ: Զամենայն ինչ զոր ունի Հայր՝ իմ է. վասն այնորիկ ասացի ձեզ, թէ յիմմէ անտի առնուցու՝ և պատմեսցէ ձեզ: ԺԶ. 15:

Եւ ելանեն խաչիւ և աւետարանաւ և մոմեղինօք և ամենայն զարդուք ի դուռն, ասելով

ՇԱՐԱԿԱՆ ԴԶ

Առաքելոյ աղաւնոյ իջանելով: Երգ. տես. : 763.

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Յովհաննու: ԺԶ. 16:

Տէրն մեր Յիսուս Քրիստոս ասէ.

Փոքր մի՛ և ոչ ևս տեսանէք զիս, և ապա սակաւիկ մի՛ և տեսանիցէք զիս. և ես երթամ առ Հայր: Ասէին ոմանք յաշակերտաց անտի ցմիմեանս. զի՞նչ է այս՝ զոր

Digitized by Google

ասէ ցմեզ, թէ փոքր մի՝ և ոչ տեսանէք զիս, և դարձեալ սակաւիկ մի՝ և տեսանիցէք զիս. և թէ ես առ Հայր իմ երթամ։ Եւ ասէին. զի՞նչ իցէ այն փոքր միսեան. չգիտեմք զինչ խօսի։ Գիտաց Յիսուս եթէ կամէին զնա հարցանել, և ասէ ցնոսա. վասն այդորիկ խնդրէք ընդ միմեանս զի ասացի՝ թէ փոքր մի՝ և ոչ տեսանէք զիս, և դարձեալ սակաւիկ միւս ևս և տեսանիցէք զիս։ Ամէն ամէն ասեմ ձեզ, զի լայցիք և ողբասջիք դուք, և աշխարհ խնդասցէ. դուք տրտմեսջիք, այլ տրտմութիւն ձեր յուրախութիւն եղիցի։ Կին յորժամ ծնանիցի՝ տրտմութիւն է նմա, զի հասեալ է ժամ նորա. այլ յորժամ ծնցի զմանուկն, ոչ ևս յիշէ զնեղութիւնն վասն խնդութեանն, զի ծնաւ մարդ յաշխարհ։ Եւ դուք այժմ տրտմութիւն ունիք, այլ դարձեալ տեսից զձեզ, և ուրախ լիցին սիրտք ձեր, և զուրախութիւնն ձեր ոչ ոք հանիցէ ի ձէնջ։ Եւ յայնմ աւուր զիս ինչ ոչ հարցանիցէք։ Ամէն ամէն ասեմ ձեզ, զի զոր ինչ խնդրիցէք ի Հօրէ իմմէ յանուն իմ, տացէ ձեզ։ Մինչև ցայժմ ոչ ինչ խնդրեցէք յանուն իմ. խնդրեցէք՝ և առնուցուք. զի ուրախութիւնն ձեր լցեալ եղիցի։ Զայս առակօք խօսեցայ ընդ ձեզ. եկեսցէ ժամանակ՝ յորժամ ոչ ևս առակօք խօսեցայց ընդ ձեզ, այլ յայտնապէս զՀօրէ պատմեցից ձեզ։ Յայնմ աւուր խնդրեսջիք յանուն իմ. և ոչ ասեմ ձեզ՝ եթէ ես աղաչեցից զՀայր վասն ձեր. զի ինքն իսկ Հայր սիրէ զձեզ, զի դուք զիս սիրեցէք, և հաւատացէք եթէ ես յԱստուծոյ ելի։ Ելի ի Հօրէ՝ և եկի յաշխարհ, դարձեալ թողում զաշխարհ, և երթամ առ Հայր։ Ասեն ցնա աշակերտքն. ահա արդ յայտնութեամբ խօսիս, և առակ և ոչ մի ինչ ասես. այժմիկ գիտեմք՝ եթէ գիտես զամենայն, և ոչ ինչ պիտոյ է՝ եթէ ոք հարցանիցէ զքեզ. յայսմիկ հաւատամք եթէ յԱստուծոյ ելեր։ Պատասխանի ետ նոցա Յիսուս և ասէ. այժմ հաւատա՞յք։ Ահա եկեսցէ ժամ, և եկեալ իսկ է, զի ցրուեսջիք յիւրաքանչիւր տեղիս, և զիս միայն թողուցուք. և չեմ միայն, զի Հայր ընդ իս է։ 32։

ՇԱՐԱԿԱՆ ԴՋ

Կենդանարար Աստուած մարդացեր։ Երգ+ տես։ 763։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Յովհաննու։ ԺԶ. 33։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս ասէ.

Զայս խօսեցայ ընդ ձեզ՝ զի ընդ իս խաղաղութիւն ունիցիք. յաշխարհի աստ նեղութիւն ունիցիք, այլ քաջալերեցարուք զի ես յաղթեցի աշխարհի։ Զայս իբրեւ խօսեցաւ Յիսուս, ամբարձ զաչս իւր յերկինս եւ ասէ. Հայր, հասեալ է ժամ, փառաւորեա զՈրդի քո, զի եւ Որդի քո փառաւորեսցէ զքեզ. որպէս ետուր նմա իշխանութիւն ամենայն մարմնոյ, զի ամենայնի զոր ետուր նմա, տացէ զկեանս յաւիտենականս։ Այս են յաւիտենական կեանք, զի ծանիցեն զքեզ միայն ճշմարիտ Աստուած, եւ զոր առաքեցեր զՅիսուս Քրիստոս։ Ես զքեզ փառաւորեցի յերկրի, զգործն կատարեցի՝ զոր ետուր ցիս զի արարից. եւ այժմ փառաւորեա զիս Հայր, առ ի քէն փառօքն զոր ունէի յառաջ քան զլինելն աշխարհի առ ի քէն։ Յայտնեցի զանուն քո մարդկան, զորս ետուր ինձ յաշխարհէ. քո էին, եւ ինձ ետուր զնոսա, եւ զբանն քո պահեցին։ Արդ գիտացին՝ եթէ զամենայն ինչ զոր ետուր ինձ, ետու նոցա. եւ նոքա ընկալան, եւ ծանեան ճշմարտութեամբ՝ թէ առ ի քէն ելի. եւ հաւատացին՝ եթէ դու առաքեցեր զիս։ Արդ՝ ես վասն նոցա աղաչեմ, եւ ոչ վասն աշխարհի աղաչեմ. այլ վասն նոցա զորս ետուրն ինձ, զի քո են. եւ որ ինչ իմ է, ամենայն քո է. եւ որ ինչ քո է, այն իմ է, եւ փառաւորեալ եմ ի նոսա։ Եւ ես ոչ եւս եմ յաշխարհի, եւ նոքա յաշխարհի են, եւ ես առ քեզ գամ. Հա՛յր սուրբ, պահեա զնոսա յանուն քո, որով ետուրն ինձ. զի եղիցին մի՝ որպէս եւ մեք մի եմք։ Մինչ էի յաշխարհի ընդ նոսա, ես պահէի ըզնոսա յանուն քո՝ որով ետուրն ինձ. եւ պահեցի. եւ ոչ ոք ի նոցանէ կորեաւ, բայց որդին կորստեան, զի գիրն լցցի։ ԺԷ. 12։

ՇԱՐԱԿԱՆ ԲՋ

Նոյն եւ նման Հօր եւ Որդւոյ Հոգիդ։ Երեք տուն։ 775։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Յովհաննու։ ԺԷ. 13։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս ասէ.

Բայց արդ առ քեզ գամ. եւ զայս խօսիմ յաշխարհի, զի ունիցին զուրախութիւնն իմ լիով յանձինս իւրեանց։

Digitized by Google

Ես ետու նոցա զբանն քո, և աշխարհս ատեաց զնոսա. զի չեն յաշխարհէ, որպէս և ես չեմ յաշխարհէ։ Ոչ զայս աղաչեմ զի բարձցես զնոսա յաշխարհէ, այլ զի պահեսցես զնոսա ի չարէ։ Յաշխարհէ աստի չեն, որպէս և ես չեմ յաշխարհէ։ Սուրբ արա զնոսա ճշմարտութեամբ քով. զի քո բանդ ճշմարտութիւն է։ Որպէս զիս առաքեցեր յաշխարհ, և ես առաքեցի զնոսա յաշխարհ. և ի վերայ նոցա ես սուրբ առնեմ զանձն իմ, զի եղիցին և նոքա սրբեալք ճշմարտութեամբ։ Այլ ոչ վասն նոցա միայն աղաչեմ, այլ և վասն ամենայն հաւատացելոց բանիւն նոցա յիս. զի ամենեքին մի իցեն, որպէս դու Հայր յիս՝ և ես ի քեզ, զի և նոքա ի մեզ իցեն. զի և աշխարհ հաւատասցէ եթէ դու առաքեցեր զիս։ Եւ ես զփառսն զոր ետուր ինձ՝ ետու նոցա, զի իցեն մի՝ որպէս և մեք մի եմք. ես ի նոսա, և դու յիս, զի եղիցին կատարեալք ի մի։ Եւ գիտասցէ աշխարհ՝ եթէ դու առաքեցեր զիս, և սիրեցի զնոսա որպէս դու զիս սիրեցեր։ Հայր, զորս ետուրն ինձ, կամիմ՝ զի ուր ես եմ, և նոքա իցեն ընդ իս. զի տեսանիցեն զփառսն իմ, զոր ետուրն ցիս. զի սիրեցեր զիս յառաջ քան զլինել աշխարհի։ Հայր արդար, և աշխարհ զքեզ ոչ ծանեաւ. այլ ես զքեզ ծանեայ, և նոքա ծանեան՝ եթէ դու առաքեցեր զիս։ Եւ ծանուցի նոցա զանուն քո և ծանուցից, զի սէրն զոր սիրեցեր զիս՝ ի նոսա իցէ, և ես ի նոսա։ Զայս իբրև ասաց Յիսուս, ել աշակերտօքն հանդերձ յայն կոյս ձորոյն Կեդրոնի՝ ուր էր պարտէզ, յոր եմուտ ինքն և աշակերտքն իւր։ ԺԸ. 1։

Ե– Սուր. Աստուած. Եւ ևս խաղ։ Վասն ի վերուստ։

Ե– փոխանորդքն ընդ դասուն և զօշխարհս։

Զկնի Քարոզ. Սուրբ խաչիւ։ Աղօթք. Պահպանեա։

Ե– է դասանալն սրբասացութեան քարոզն. Եւ ևս խաղաղութեան։ Քահանայն. Օրհնութիւն և փառք։

Ե– ասկանքն խոնարհեցո և Ապրեցո։

ՄԵՍԵԴԻ յաւուրսն Պենտէկոստէի Ցորեաբեան է յայնեն ...։

ՀԱՄԲԱՐՁԻ ԲԿ

Երրորդութիւնն անբաժանելի և զօրութիւն։ 763։

ՍԱՂ. ԾԾ. Օրհնեցէք զԱստուած ի սրբութեան։ 571։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Յովհաննու։ ժԴ. 15.

Տէրն մեր Յիսուս Քրիստոս ասէ.

Եթէ սիրէք զիս՝ զպատուիրանս իմ պահեսջիք ։ 769 ։

Քարոզ. Գոհաբանելով։ Կեցո։ Աղօթ. Խաղաղութեամբ։

---

# ԵՐԿՈՒՇԱԲԱԹԻ ԲԶ

## ԵՐԿՐՈՐԴ ՕՐ ՊԵՆՏԵԿՈՍՏԷԻ

### Ի ԳԻՇԵՐԻ

*ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԲԶ*

Նոյն եւ նման Հօր եւ Որդւոյ Հոգիդ անեղ և համագոյ. բղխումն Հօր անքննաբար առօղ յՈրդւոյ անճառաբար. Ի վերնատունն այսօր իջեր զՀոգիդ շնորհաց քոց արբուցեր. ‖ ա՟րբո և մեզ ողորմութեամբ ի բաժակէդ իմաստութեան։ Էիր ստեղծող արարածոց որ շրջէիր ի վերայ ջրոց. Նոյն և ի ջուրսն աւազանին ի շնորհել մեզ քում էակցին. գգուես սիրով աղաւնակերպ զմարդիկ ծնանիս աստուածակերպ. ա՟րբո ։ Բաբուն վերնոցն իմանալեաց և ըստորին այսըր զգալեաց. որ մարգարէս տաս ի հովուաց և առաքեալս ի ձկնորսաց. աւետաւոր ըզմաքսաւորս քարոզ բանի քում զհալածողս. ա՟րբո ։

† Սարափելի հողմոյ նման ահեղագոչ սաստիկ հնչմամբ. երեւեցար ի վերնատանն Հոգիդ դասուն երկոտասան. որք առ ի քէն մկրտեցան որպէս զոսկի հրով մաքրեցան. ‖ մա՟քրեա ի մէնջ զմէգ մեղաց և ըզգեցո զլոյս փառաց։ Էկիր յերկիր աստուածաբար դատել զաշխարհս իշխանաբար. ընդ արդարութեան. և ընդ մեղաց և ընդ չարին դատաստանաց. բացեր ըզգանձդ անհունութեան պարգեւս ետուր որդւոց մարդկան. մա՟քրեա ։

Digitized by Google

Հայր անսկիզբն. որ վերօրհնեալդ ես ի դասուց քե-րովբէից. ըզքեզ աղաչեմք ողորմեա քոյոց հա-ւատացելոց: Բանդ ի Հօրէ որ յառաջ քան զյաւի-տեանս Որդի. փառակից Հօր. ողորմեա: Որ նըս-տիս ի քրովբէս եւ տեսչութեամբ խնամես զարարածըս քո. ճըշմարիտ սուրբ Հոգի. ողորմեա:

Անեղն ի Հօրէ ծընեալ Որդի յանէից գոյացոյց զե-ղեալքս. զերկնային եւ զերկրաւորս էութիւն. արա-րածք ամենայն տուք փառս արարչին յաւիտենից:

Պատկեր աներեւոյթ փառացըն Հօր ի պատկեր բա-րերարութեան իւրոյ. արար ըզմարդկային բընութիւն. արարածք: Լոյսն ի Հօրէ լուսոյ ծագեալ լուսափայլ զարդարեաց զԱդամ. ի դրախտին եդեալ անմահ տըն-կոցն երկրագործ. արարածք:

Ըստ աւետեաց մարգարէին որ առ փրկեալքս ա-րեամբ զաւինդ. ցընծամք եւ մեք ծառայք անարժանք ընդ զալուստ Տեառնըդ կըրկնակի. շնորհեա մեզ Տէր ընդ արդարոցն ընդ առ ի քէն ընկեալ ծառայցն. այն-ժըմ յուսով ը զուարճանալ եւ յերկրորդին ընդ քեզ ցընծալ: Սըմին նըման տայ աւետիս Զաքարիաս նոր Սիոնի. եթէ ուրախ լեր ահա գայ առ քեզ խոնարհ եւ հեզ արքայ. Նըստեալ ի յէշ եւ յաւանակ կըրկին ազանց գոլ օրինակ. Նըստեալդ յաթոռ քերովբէից նիստ զըթութեամբ ի մեր հոգիս: Զանհեղ փառաց քոց երեւումն որ լինելոց է յերկրորդումն. ետես Դա-ւիթ յառաջագոյն ծանոյց կանխաւ ազդմամբ Հոգւոյն. թէ յայտնապէս Աստուած գայցէ հուր առաջի իւր բոր-բոքէ. յայնժամ Յիսուս ի մեզ խնայեա զըթած Քրիս-տոս եւ ողորմեա: Աստուածածին անհաւրանացեալ յեր-կրէ երկնից հարսն ընծայեալ. յորժամ բազմիս լուսոյ

նըման քո Միածնիդ յաջակողմեան. յայնժամ մաղթեա ընդ մեր ըզնոյն փրկել ըզմեզ յահեղ բոցոյն. համադասել ընդ արդարոցն երգել ըզփառս ընդ երկնայնոցն:

ՄՆ. Բանն առաքեալ ի Հօրէ... որ վասըն մեր մարմնացաւ... եւ ցընծութիւն աշխարհի յայտնեցաւ. ‖ ըզքեզ բարեբանեմք Աստուածածին կոյս: Զի որում ոչըն հանդուրժէին... բոցանըշոյլ սերովբէ...քն. նա բնակեցաւ ի քում յորովայնի. ըզքեզ: Ցորմէ սարսեալ դողային... փայլակնացայտ ի լուսո...յն. ի գիրկըս քո ըզնա ընկալար. ըզքեզ:

ԱՊ. Օրհնեմք ըզքեզ անըսկիզբըն Հայր. յամենայն ժամ օրհնութիւն ի բարձունս: Գովեմք ըզքեզ միածին Որդի. յամենայն ժամ գոհութիւն ի բարձունս: Բարեբանեմք ըզքեզ սուրբ Հոգի. յամենայն ժամ փառըք քեզ Աստուած:

Հընչմամբ փողոյ. սաղմոսարանաւ եւ քնարիւ. օրհնեցէք ըզՏէրն ի յերկինս: Որդիք Սիովնի. ցընծութեամբ եւ ուրախութեամբ. գովեցէք զՈրդին միածին: Եւ սուրբ զՀոգին. ամենայն շունչք բարեբանեցէք. երգով եւ ձայնիւ ցընծութեամբ:

ՀՆ. Հրեշտակային ձայնիւն օրհնեսցուք զամենասուրբ զԵրրորդութիւնըն փառաւորելով ըզՀայր. որ վերակեչեաց ‖ զամենեսեան ի մահուանէ յանմահութիւն: Երգեցէք Տեառն երգ նոր եկեղեցիք սըրբեցելոց. Քրիստոսի երկըրպագելով. որ վերադասեաց զամենեսեան: Սըրբասաց ձայնիւն օրհնեսցուք հոգեւորական հընչմամբ գովեսցուք. սուրբ զՀոգին փառաւորելով. որ վերահանգոյց զամենեսեան:

ՄՏ. Որում խաչեր Սըրբուհի Գաբրիելի աւետեօքն. որ քարոզեաց ըզգալըստ արքային Տեառն ի

յերկնից ։ Որդւոյն ընդ քեզ Մարիամ ի քեզ սուրբ հոգին եկեսցէ. եւ զօրութիւն Բարձրելոյն ի վերայ քո հովանասցի ։ — Փառք Հօր ։ Որ ծնաւ նորոգ է ի քէն Իսրայելի առաջնորդ. եւ ընդհանուր քարգէն Աստուած հզօր անմահն Բանն ։

— Այժմ եւ միշտ ։ Սէրն ի սիրոյ զսէրդ առաքելոց յեքըն զանդամս իւր քեւ յօդեաց. զեկեղեցի իւր զոր շինեաց եօթըն սեամբ քո հաստատեաց. տնտես ի նմա եդ զառաքեալսն եօթնեակ շնորհօք քո զարդարեաց. մաքրեա ի մէնջ ըզմէգ մեղաց եւ ըզգեցո ըզլոյս փառաց ։

---

ՅԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԱԿ

Որ անխառնելիդ ես յէութեան եւ անպատում Հոգի ճշմարիտ. անըսկըզբնաբար բղխումն ի Հօրէ եւ համագոյակից Որդւոյն միածնի. ‖ օրհնեմք ըզքեզ Աստուած հարցըն մերոց ։ Որ կատարեալ անձնաւորութեամբ յերից կատարելոց մի եւ նոյն բնութիւն. որով ընդ Հօր եւ ընդ Որդւոյ միշտ երկրպագես յարարածոց Հոգի Աստուծոյ. օրհնեմք ։ Որ համապատիւ Հօր եւ Որդւոյ քարոզեցին ըզքեզ աստուածաբանքն եկեղեցւոյ. յոր մըկըրտիմք եւ դաւանեմք համագոյ Երրորդութիւն անբաժանելի. օրհնեմք ։

Գ. Ըզ Տէր օրհնեցէք ‖ բա ։ … րձր արարէք զբաշխողըն շնորհաց ։ Եկայք նոր արարածք ի Քրիստոս նորածնեալք աւազանաւն ի Հոգւոյն սրբոյ. բա ։ Նոր քահանայութիւն վերապատուեալ ի Քրիստոսէ ծծմամբ սուրբ Հոգւոյն. բա ։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԱԿ

Զանճառելի զլոյս աստուածութեանն. տնօրինա ։ 213 ։

ՈՂՈՐՄԵԱ ԱԿ

Որ առաքեցար ի Հօրէ Հոգիդ անեղ եւ համագոյ. աղաչանօք տնօրինաբար քում էակցին լինել մխիթարիչ սուրբ առաքելոցն. || աղաչեմք ըզքեզ ողորմեա։ Որ իջեր տերաբար յերկնից սաստիկ հողմոյ նըման Աստուած յայտնապէս. եւ ի հրեղէն լեզուս բաժանեալ հանգեար ի դասս առաքելոցն. աղաչեմք։ Որ արբուցեր երկնաւոր գինեաւն իմաստութեան զհոգիս սրբոց քոց առաքելոցն. որք արբուցին տըրտմեցելոց որդւոց Ադամայ ըզբաժակն ուրախարար յայգւոյն Եդեմայ. աղաչեմք։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԱԿ

Որ յերկնային զօրս անմարմնոցըն նախ հեղեր առատապէս հոգիդ ճըշմարիտ. զաստուածային և զգերագոյն քո իմաստութիւնդ լինել փառաբանիչ սուրբ Երրորդութեանդ. ընդ || նոսին փառաւորեմք զերրեակ միութիւնդ։ Որ զկերպարանն աստուածային ստեղծեալ Երրորդութեանդ խորհրդականութեամբ. զարդարեցեր փրկչամբ շնորհաց քոց կենդանարար. եւ ընդ ծնեալսն առ ի նմանէ խօսեցար օրինօք եւ մարգարէիւք. ընդ նոսին։ Որ յերկրորդի լինելութեանս յետ յարութեանն քում էակցին. մըտեալ ի վերնատունն դրօքըն փակելովք շնորհելով ըստ առաջին փըրկմանն ըզքեզ մետասանից առաքելոցն ասաց առէք հոգի սուրբ. ընդ նոսին։

Զկնի Սուրբ Աստուածին ՍԱՂՄՈՍ ՃԳ. է ՃԷ–

Կ8. Առաքես զոգի քո և ստանաս զնոսա, և նորոգես զերեսս երկրի։

Փխ. Օրհնեա անձն իմ զՏէր, Տէր Աստուած։ 342։
Ալէլուիա. ալէլուիա։

ԸնԹերցուած ի ԾՆՆդոց: Ա. 1:

Ի սկզբանէ արար Աստուած զերկին և զերկիր։ Եւ

Digitized by Google

երկիր էր աներևոյթ և անպատրաստ, և խաւար ի վերայ անդնդոց. և Հոգի Աստուծոյ շրջէր ի վերայ ջուրց։ Եւ ասաց Աստուած. եղիցի լոյս։ Եւ եղև լոյս. և ետես Աստուած զլոյսն զի բարի է. և մեկնեաց Աստուած ի մէջ լուսոյն և ի մէջ խաւարին. և կոչեաց Աստուած զլոյսն տիւ, և զխաւարն կոչեաց գիշեր. և եղև երեկոյ և եղև վաղորդայն, օր մի։ 5։

Ընթերցուած յԱռակաց։ Թ. 1։

Իմաստութիւն շինեաց իւր տուն, և կանգնեաց սիւնս եօթն։ Զեն զզենլիս իւր, և խառնեաց ի խառնելիս զգինի իւր. և պատրաստեաց զսեղան իւր։ Եւ առաքեաց զծառայս իւր, կոչել բարձր քարոզութեամբ ի խառնելիս իւր՝ և ասէ, որ ոք իցէ անզգամ, եկեսցէ առ իս։ Եւ ցպակասամիտսն ասէ. եկայք կերայք ի հացէ իմմէ, և արբէք զգինի իմ զոր խառնեցի ձեզ։ Թողէք զանզգամութիւն և կեցջիք, խնդրեցէք զիմաստութիւն զի ապրեսջիք. և ուղղեցէք գիտութեամբ զհանճար, և ուղիղ ճանապարհաւ իմացարուք զխրատ։ 6։

Ընթերցուած ի Գործոց առաքելոց։ Ժ. 44։

Եւ մինչդեռ խօսէր Պետրոս զբանս զայս, հանգեաւ Հոգին սուրբ ի վերայ ամենեցուն՝ որ լսէին զբանն։ Զարմացան՝ որք ի թլփատութենէ անտի հաւատացեալք եկեալ էին ընդ Պետրոսի, զի և ի հեթանոսս պարգևք Հոգւոյն սրբոյ զեղունին. քանզի լսէին ի նոցանէ խօսել լեզուս, և մեծացուցանել զԱստուած։ Յայնժամ պատասխանի ետ Պետրոս. միթէ զջուրն ոք արգելո՞ւլ կարէ առ ի չմկրտելոյ զսոսա, որք և զՀոգին սուրբ ընկալան որպէս և մեք։ Եւ հրամայեաց նոցա մկրտել յանուն Յիսուսի Քրիստոսի. յայնժամ աղաչեցին զնա լինել անդ աւուրս ինչ։ 48։

Զայնէ Ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա.

Զայն Տեառն ի վերայ ջուրց, և Աստուած փառաց որոտաց, և Տէր ինքն ի վերայ ջուրց բազմաց։

Սրբոյ Աւետարանին որ ըստ Մատթէոսի։ Գ. 16։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ իբրև մկրտեցաւ (Յիսուս), ել վաղվաղակի ի ջրոյ անտի. և ահա բացան նմա երկինք, և ետես զՀոգին

Digitized by Google

Աստուծոյ՝ զի իջանէր իբրև զաղաւնի և գայր ի վերայ նորա։ Եւ ահա ձայն յերկնից որ ասէր. դա է Որդի իմ սիրելի՝ ընդ որ հաճեցայ։ Յայնժամ վարեցաւ Յիսուս յանապատ ի Հոգւոյն՝ փորձել ի սատանայէ։ Եւ պահեալ զքառասուն տիւ և զքառասուն գիշեր՝ ապա քաղցեաւ։ Դ. 2։

Երգ. Արարչական։ Քար. Խնդր։ Կեցո։ Աղ. Քում ամե։

---

## ՑԵՐԵԿՈՅԻՆ

ՍԱՂ. ԺԴ. ԻԸ. Առաքեա։ Փխ. Օրհնեա անձն։ 342։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Յովհաննու։ ԺԴ. 15։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս ասէ.

Եթէ սիրէք զիս՝ զպատուիրանս իմ պահեսջիք։ 769։

ՀԱՄԲԱՐՁԻ ԲԿ

Այսօր երկնայինքն ուրախա։ Վեց տուն. տես ի հայր։

ՍԱՂՄՈՍ ԻԸ

ԻԸ. Ձայն Տեառն ի վերայ ջուրց, և Աստուած փառաց որոտաց, և Տէր ինքն ի վերայ ջուրց բազմաց։

Փխ. Մատուցէք Տեառն որդիք Աստուծոյ, մատու։ 399։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի։ Գ. 16։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ իբրև մկրտեցաւ (Յիսուս), ել վաղվաղակի։ 780։

Քարոզ. Գոհաբանելով։ Կեցո։ Աղօթք. Խաղաղութեամբ։

---

# ԵՐԵՔՇԱԲԱԹԻ · ԲԿ

## ԵՐՐՈՐԴ ՕՐ ՊԵՆՏԵԿՈՍՏԷԻ

## Ի ԳԻՇԵՐԻ

ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԲԿ

Այսօր երկնայինքն ուրախացան ընդ երկրաւորացս նորոգման. քանզի Նորոգողն էից Հոգին էջ ի սուրբ վերնատանն. որով նորոգեցան դասք առաքելոցն։ Այսօր հողանիւթեայ բնութիւնս ցնծայ ընդ Հօր հաշ-

տութեան · քանզի որ եբարձ զՀոգին ի մարդկանէ մարմին եղելոց · դարձեալ վերստին ընդնոյն պարգեւէ ։ Այսօր մանկունք եկեղեցւոյ տօնեն ցնծութեամբ զգալուստ սուրբ Հոգւոյն · որով զարդարեցան ի զգետըս լուսափայլս եւ զերապայծառս · երգեն ընդ սրովբէին զերեքսրբեանն ։

† Որ զմիաբանեալսն յաշտարակին բաժանեցեր լեզուացըն քակեաց · այսօր ըզբաժանեալ լեզուս ազգաց միաբանեաց դարձեալ ի սուրբ վերնատանն · ‖ ամենայն Հոգիք օրհնեցէք զՀոգին Աստուծոյ ։ Որ էջ Հոգին Տեառն եւ առաջնորդեաց երկոտասան ցեղիցն Իսրայելի ի յանապատին · այսօր երկոտասանն առաքելոցն առաջնորդէ ի յաւետարանն · ամենայն ։

Այսօր աղբիւր գիտութեան բըղխեաց ի սուրբ վերնատունն · յորմէ լըցան տիեզերք գնացիւք գետոյն առոգմամբ ։ Այսօր իջեալ ի յերկնից · Հօր աւետիքն ի բարձանց · տալ աւետիս Ադամայ դառնալ յԵդեմ վերըստին ։ Այսօր խընդայ Նոր Սիոն · որդւովք երովք զոր ծընաւ · օծմամբ Հոգւոյն նորոգեալ յորդ- լուսոյ եւ տուընջեան ։ Այսօր ի ձայն գոհութեան զՀոգին ընդ Հօր եւ Որդւոյ · Հոգիք ամենայն օրհնեցէք զերեքսրբեանն երգելով ։ Այսօր ցընծամք երկրաւորքս · ընդ գալըստեան երկնայնոյն · եւ պարելով ընդ հրեշտակս երգեսցուք ըզփառս ի բարձունս ։

ՎԱՐ · Օրհնեցէք մանկունք ընդ երկնայնոցն ըզՀայրն երկնաւոր · որ մարմնացեալ Բանիւն · վըկայեաց յերկնից ‖ այսօր ի Թաբօր լերինն ։ Գովեցէք ըզսերովբէսն զՈրդին միածին · որ փայլեաց մարմնով զլոյս աստուածութեանն այսօր ։ Բարեբանեցէք ըզքերովբէսն զՀոգին ճըշմարիտ · որ լուսափայլ ամպով էակցին հովանացեալ այսօր ։

Իջեր Տէր ողորմութեամբ քո յաշխարհս. եւ ըզմեռեալ բընութիւնս ի կեանս վերափոխեցեր։ Ելեր Տէր առ Հայր փառօք ի յերկինս. եւ մըխիթարիչ առաքելոցն առաքեցեր սուրբ զՀոգիդ։ Բացեր Տէր այսօր ըզգանձդ երկնային. եւ բաշխեցեր առատապէս պարգեւս աղքատ բընութեանս։

Որ օրհնիս ի հրեշտակաց անդադար. Հայր երկնաւոր ընկալ զաղաչանս մեր։ Առաջի քո անկանիմք փըրկիչ. խընդրեմք զթողութիւն բազում յանցանաց մերոց։ Որ գիտակդ ես գաղտնեաց մարդկան Հոգիդ սուրբ. Տէր և կենդանարար ընկալ զաղաչանս մեր։

ԱԳ. Օրհնեցէք ըզՏէր ընդ երկնայինսըն նըմանեալ դասուց. նոր ժողովուրդք ասելով. քեզ Հօր տըւողիդ || մեզ ըզկեանըս փառք։ Երգեցէք Տեառն երգ նոր եկեղեցիք ընտրելոց որդիք Սիօնի ասելով. քեզ Որդւոյ շնորհողիդ մեզ։ Բարեբանեցէք զԱստուած ի սքանչելիս սըրբութեան նորա ձայնիւ ցընծութեամբ ասելով. քեզ Հոգւոյդ պարգեւողիդ մեզ։

ՀԲՇ. Որ յանէից ստեղծեր ըզպաշտօնեայս քո ի հուր կիզելոյ հուրդ անեղական. ընդ նոսին օրհնեմք || ըզքեզ եւ մեք հողեղէնքս։ Որ բանիւ գոյացուցեր զիննեակ դասըս հրեղինաց Բանդ ի սկըզբանէ. ընդ նոսին գովեմք ըզքեզ։ Որ արարեր յօգիս իմանալի ըզհրեշտակըս քո Հոգի Աստուծոյ. ընդ նոսին բարեբանեմք ըզքեզ։

ՀՆ. Թագաւոր խաղաղութեան որ քաղցրութեամբ խնամեիս զքո զարարածս. յիշեա || Տէր զհոգիս ննջեցելոցն ընդ սուրբըս քո եւ դասաւորեա ի յաւուրն այցելութեան։ Որ կոչեցեր ի դրանց մահու ըզսիրե-

լին քո զղամպարս․ եւ ծանուցեր զաստուածութիւն մեզ ընդհանուր տիեզերաց․ լուսաւորեա Տէր։ Ի տաճարի քում սրբութեան մատուցանեմք քեզ պաշտաման արտասուալից․ պայծառացո Տէր։

ՄԾ․ Որ ողորմեցար ի մեղս ծնեալ մարդկան Հայր երկնաւոր ըստ մարգարէին․ եւ եղեւ բնութեանս այսօր պարգեւ ըզկոյսըն սուրբ ըզծնօղ Որդւոյդ միածնի․ Մաղթանօք սորա Տէր մեզ ողորմեա։ Որ ցուցեր ի մեզ յամպոյ օրինաց Որդիդ այսօր զկոյսըն Մարիամ․ յորմէ ծընար մարմնով եւ բարձեր նովաւ ըզմեղս նախամարդին Ադամայ․ մաղթանօք։ — փառք Հօր։ Որ մաքրեցեր Հոգիդ սուրբ ըզսիրտ եւ զարգանդ մօր քո փառակցին․ այսօր ամուլ ծնողաց նորին ետուր ըզմայր Բանին զօրհնիչն Եւայի․ մաղթանօք։

— Այժմ և միշտ։ Որ ելից Հոգին Տեառն ըզԲեսելէլ ճարտարապետ խորանին․ այսօր շինէ զմարմնեղէն խորան սուրբ Երրորդութեանն․ ամենայն հոգիք օրհնեցէ՛ք զՀոգին Աստուծոյ։

---

ՅԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԴԶ

Որ բոլորից ես պատճառ էից անպատճառից եւ որոց պատճառաւ․ Հայր անծին եւ անըսկիզբն Որդւոյ պատճառ անժամանակ ծնընդեամբ եւ Հոգւոյ բըղխման անքըննաբար․ Օրհնեալ Տէր Աստուած հարցն մերոց։ Որ կամաւ Հօր եւ սուրբ Հոգւոյն անեղակից Բանդ Աստուած․ ի հայրական ծոցոյ իջեր աւետեօք Գաբրիելի որ ըզՀոգին բերկրեալ կուսին յորմէ ծընար մարմնով անճառաբար ի Հոգւոյն սըրբոյ․ օրհնեալ։ Որ մարգարէիւքըն գուշակեցեր Հոգիդ յառաջագոյն զգալուստ քում էականցն․ եւ ի Յորդանան վե-

* Սկիզբն․ տես ի Զեկուցումն, էջ Զ։

կայծեցեր աղաւնակերպ իջմամբ ի վերայ մարմնացեալ Բանին. օրհնեալ:

Գ. ԸզՏէր օրհնեցէք բարձր արարէք ըզնա յաւիտեանս: Այսօր համագոյակիցըն Հօր եւ Որդւոյ Հոգին. հրափայլ ծագմամբ. իջեալ ի վերնատունըն մըկըրտեաց ըզդաս առաքելոցն ի հուրն անկիզելի ըզՏէր: Այսօր արարչակիցըն Հօր եւ Որդւոյ Հոգին. բըղխեալ անհիւթական ջուր կենդանի յերուսաղէմ. իմաստութեան եւ մաքրութեան մեղաց ըզՏէր:

ՄՆԾԱՑՈՒՍՑԷ ԴՁ

Ուրախացիր Աստուածածին վերօրհնեալդ ի սրով: 265:

ՈՂՈՐՄԵԱ ԴՁ

Որ ի վերայ բըղխեալ գաւազանին Յեսսեայ հանգեար եօթնարփեան շնորհօք. Հոգի Աստուծոյ եւ խորհըրդոյ. Հոգի հեզութեան եւ զօրութեան. Հոգի իմաստութեան եւ գիտութեան. Հոգի երկիւղի աստուածպաշտութեան. || աղաչեմք շնորհեա եւ մեզ ողորմութեամբ ի քոց պարգեւացդ: Որ զգուշակեալըն քո Եսայեաւ եղից օծեալն ի քէն մարմնով. ասէ Հոգի Տեառն ի վերայ իմ. զոր ի տնօրէնութեանըն խոնարհութեամբ ընթերցեալ որ վասն իւր գրեալ մարգարէին. աղաչեմք: Որ զառաքըեալս առ ի Հօրէ եւ ի Հօգւոյդ Բանին յաշխարհ. մարգարէիւըն ծանուցեր զոր ի դիմաց մարդացելոյն բարբառէր առ մարդկութիւնս Տէր Տէր առաքեաց զիս եւ Հոգի նորա. աղաչեմք:

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԴՁ

Ընդ երկնայնոց հոգեղինաց դասուցն. հոգւոց ստեղծողին երգեմք. || փառք ամենօրհնեալ է գալուստ Հոգւոյն սրբոյ: Ընդ առաքելոց խմբիցն այսօր զուարճացեալ վերագովեմք Հոգւով. փառք: Աստանօր վերնա-

տո՛ւնս · Սիմէո՛ն որդի՛ք Նորո՛յ ե՛րգեցէք ձա՛յնիւ վերնո՛ցն · փա՛ռ ։ Ի՛ ձա՛յն ցը՛նծութեա՛ն ամենա՛յն հոգի՛ք տացո՛ւք զմե՛զ Նորոգո՛ղին ըղփանաս · փա՛ռ ։

Ձկնէ Սուրբ Աստուածքն ՍԱՂՄՈՍ ԼԲ · է Բէ

Կց · Ողորմութեամբ Տեառն լի եղև երկիր, և բանիւ Տեառն երկինք հաստատեցան, և հոգւով բերանոյ Նորա ամենայն զօրութիւնք նոցա ։

Փխ · Ցնծացէք արդարք ի Տէր, ուղղոց վայելէ օրհնութիւն · խոստովան եղերուք Տեառն օրհնութեամբ, տասնաղեաւ սաղմոսարանաւ սաղմոս ասացէք Նմա ։

Օրհնեցէք զՏէր յօրհնութիւն նոր զի բարի է · սաղմոս ասացէք Նմա օրհնութեամբ ։

Ուղիղ են պատգամք Տեառն, և ամենայն գործք Նորա հաւատովք են, և սիրէ զողորմութիւն և զիրաւունս Տէր ։

Ողորմութեամբ Տեառն լի եղև երկիր, և բանիւ Տեառն երկինք հաստատեցան, և հոգւով բերանոյ Նորա ամենայն զօրութիւնք նոցա ։

Ժողովեաց որպէս ի տիկ զջուրս ծովու, և դնէ ի խորս գանձս իւր ։

Երկիցէ ի Տեառնէ ամենայն երկիր, և ի Նմանէ դողասցեն ամենայն բնակիչք աշխարհի ։

Զի Նա ասաց՝ և եղեն, ինքն հրամայեաց՝ և հաստատեցան ։

Տէր ցրուէ զխորհուրդս հեթանոսաց, անարգէ Տէր զխորհուրդս ժողովրդոց, և արհամարհէ Տէր զխորհուրդս իշխանաց ։

Խորհուրդ Տեառն յաւիտեան մնայ, խորհուրդ սրտի Նորա ազգէ մինչև յազգ ։

Երանի ազգի որոյ Տէր Աստուած օգնական է Նմա, ժողովուրդ զոր ընտրեաց ի ժառանգութիւն իւր ։

Յերկնից նայեցաւ Տէր յամենայն որդիս մարդկան, ի պատրաստ բնակութենէ իւրմէ հայեցաւ յամենայն բնակիչս աշխարհի ։

Ո ստեղծ առանձին զսիրտս նոցա, ի միտ առնու զամենայն գործս նոցա ։

Ոչ թէ ի բազում զօրս իւր ապրեսցի թագաւոր, և ոչ հսկայ ի բազում զօրութեան իւրում ։

Digitized by Google

Սուտ է ձի ի փրկութեան իւրում, ի բազում զօրութեան իւրում ոչ ապրեցուցանէ զհեծեալն ։

Աչք Տեառն ի վերայ երկիւղածաց իւրոց, և որք յուսան յողորմութիւն Նորա ։

Փրկել ի մահուանէ զանձինս նոցա, կերակրել զնոսա ի սովի ։

Անձինք մեր համբերեսցեն Տեառն, զի օգնական և պաշտպան մեր է ։

Ի Նա ուրախ եղիցին սիրտք մեր, և յանուն սուրբ Նորա յուսացուք ։

Եղիցի ողորմութիւն քո Տէր ի վերայ մեր, որպէս յուսացաք ի քեզ ։

Ալէլուիա ալէլուիա ։

Ընթերցուած ի Ծննդոց : Ը . 6:

Եւ եղև յետ քառասուն աւուր եբաց Նոյ զպատուհան տապանին զոր արար . և արձակեաց զագռաւն, և ել և անդրէն ոչ դարձաւ մինչև ցցամաքել ջրոյն յերկրէ ։ Եւ արձակեաց զաղաւնին զհետ նորա՝ տեսանել թէ ցածուցեա՞լ իցէ ջուրն յերեսաց երկրէ . և չգտեալ աղաւնոյն հանգիստ ոտից իւրոց՝ դարձաւ անդրէն առ Նա ի տապան անդր . զի ջուր դեռ ունէր զամենայն երեսս երկրի . և ձգեաց զձեռն և ընկալաւ զնա, և ա՛ռ զնա անդրէն առ իւր ի տապան անդր ։ Եւ դադարեաց ևս աւուրս եօթն, և դարձաւ արձակեաց զաղաւնին ի տապանէ անտի . և դարձաւ առ Նա աղաւնին ընդ երեկս, և ունէր տերև ձիթենւոյ շիղ ի բերան իւրում . և գիտաց Նոյ, թէ ցածուցեալ են ջուրքն յերկրէ ։ Եւ դադարեաց աւուրս եօթն ևս, և դարձեալ արձակեաց զաղաւնին . և ոչ ևս յաւել դառնալ առ Նա ։ 12 ։

Ընթերցուած յԱռակաց : Ի... . Ա . 5 :

Զի սուրբ Հոգին իմաստութեան փախիցէ ի նենգութենէ, և մերժեսցի ի խորհրդոց անմտաց, և յանդիմանեսցէ ի հասանել ի վերայ անիրաւութեանց ։ Զի մարդասէր Հոգին իմաստութեան՝ ոչ արդարացուցանէ զհայհոյիչն ի շրթանց իւրոց . զի երիկամանց Նորա է վկայ Աստուած, և սրտի Նորա ստուգիկան ճշմարիտ, և լեզուի Նորա ունկնդիր ։ 6 ։

Ընթերցուած ի Գործոց առաքելոց : ԺԳ . 1 :

Եւ էին ոմանք յԱնտիոք ըստ եկեղեցւոյն մարգարէք

Digitized by Google

և վարդապետք, Բառնաբաս և Շմաւոն կոչեցեալն Նիգէր, և Ղուկիոս Կիւրենացի, և Մանայէն դայեկորդի Հերովդի չորրորդապետի, և Սաւղոս։ Մինչդեռ ի պաշտաման Տեառն կային և պահէին, ասէ Հոգին սուրբ. որոշեցէք ինձ զԲառնաբաս և զՍաւղոս ի գործ՝ յոր կոչեցեալ է իմ զդոսա։ Յայնժամ պահեալ և աղօթս արարեալ, եդին ձեռն ի վերայ նոցա և արձակեցին։ Եւ նոքա առաքեալք ի Հոգւոյն սրբոյ՝ իջին ի Սելևկիա, և անտի նաւեցին ի Կիւպրոս. և հասեալ ի Սաղամինա՝ պատմէին զբանն Աստուծոյ ի ժողովուրդս Հրէից. ունէին և զՅովհաննէս պաշտօնեայ։ 5։

Ձայնի— Ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա.

Առաքէ զբան իւր և հալէ զնոսա, շնչեսցէ հողմք և գնասցեն ջուրք։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Յովհաննու։ Ա. 29։

ԶՏէրն մեր Յիսուս Քրիստոս

Ի վաղիւ անդր տեսանէ (զՅիսուս) զի գայր առ նա, և ասէ. ահաւասիկ գառն Աստուծոյ՝ որ բառնայ զմեղս աշխարհի։ Սա է՝ վասն որոյ ես ասէի, զկնի իմ գայ այր, որ առաջի իմ եղև, զի յառաջ իսկ էր քան զիս։ Եւ ես ոչ գիտէի զնա, այլ զի յայտնի լինիցի Իսրայէլի վասն այնորիկ եկի ես ջրով մկրտել։ Վկայեաց Յովհաննէս և ասէ, թէ տեսանէի զՀոգին՝ զի իջանէր իբրև զաղաւնի յերկնից, և հանգչէր ի վերայ նորա։ Եւ ես ոչ գիտէի զնա, այլ որ առաքեացն զիս մկրտել ջրով՝ նա ասաց ցիս. յոյր վերայ տեսանիցես զՀոգին, զի իջանիցէ և հանգչիցի ի վերայ նորա, նա է որ մկրտէ Հոգւովն սրբով։ Եւ ես տեսի, և վկայեցի եթէ սա է Որդին Աստուծոյ։ 34։

Երգ Էական։ Քաղ. Խնդր։ Կեցո։ Աղ. Քում ամենա։

---

Յ Ե Ր Ե Կ Ո Յ Ի Ն

ՍԱՂ. ԼԲ. ԿՑ. Ողորմութեամբ։ Փխ. Ցնծացէք։ 786։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի։ Գ. 16։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ իբրև մկրտեցաւ (Յիսուս), ել վաղվաղակի։ 780։

ՀԱՄԲԱՐՁԻ ԳԶ

Արեգակն արդարութեան Քրիս։ վեց տուն. տես է վայր։

ՍԱՂՄՈՍ ԾԽԷ

48. Առաքէ զբան իւր և հալէ զնոսա, շնչեսցեն հողմք և գնասցեն ջուրք ։

Փխ. Գովեա Երուսաղէմ զՏէր, և օրհնեա ։ 542 ։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Յովհաննու ։ Ա. 29 ։

ՁՏէրն մեր Յիսուս Քրիստոս

Ի վաղիւ անդր տեսանէ (զՅիսուս) զի գայր ։ 788 ։

Քարոզ. Գոհաբանելով։ Կեցո։ Աղօթ. Խաղաղութեամբ։

---

# ՉՈՐԵՔՇԱԲԱԹԻ · ԳԶ

## ՉՈՐՐՈՐԴ ՕՐ ՊԵՆՏԵԿՈՍՏԷԻ



### Ի ԳԻՇԵՐԻ

ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԳԶ

Արեգակն արդարութեան Քրիստոս ծագեալ յաշխարհս հալածեաց ըզխաւարն անգիտութեան. եւ յետ մահու եւ յարութեան համբարձաւ առ Հայր յորմէ ծագեաց. որ երկրպագի յերկնաւորաց եւ յերկրաւորաց ընդ Հօր եւ սուրբ Հոգւոյն. ‖ վասն որոյ և մեք երկրպագանեմք Հօր Հոգւով եւ ճըշմարտութեամբ ։ Որ փոխանակ ծոցածին Բանին որ ել յերկինս. առաքեցաւ աւետիքըն Հօր ի բարձանց Հոգին ճըշմարտութեան. մըխիթարել զորս յԱդամայ տըրտմեցելոց եւ հրագինել զընտրեալ դասս առաքելոցն. վասն ։ Այսօր տըրտմական և գիշերային լուծան երկունք ծնընդեան նախամօրն. քանզի զծնեալսըն մարմնով ի մահ եւ յապականութիւն. վերըստին ծնանի Հոգին յորդէս լուսոյ Հօրն երկնաւորի. վասն ։

† Ո՛վ համագոյդ ես Հօր և Որդւոյ. անճառաբար

բղխումն ի միշտ էէն. այսօր բղխեցեր ջուր կեն-դանի յերուսաղէմ ‖ Հոգի Աստուծոյ ողորմեա: Որ արարչակից ես Հօր և Որդւոյ. որով կենդանա-ծնեալք ի ջրո ւրս արարածք. այսօր որդիս Աստու-ծոյ ծնանիս ի ջուրց Հոգի.

Հոգիդ ճշմարիտ. որ զաստուածային ըզհրամանսն քո զառածըն դաւթեան լցեր. արբուցանելով զաշա-կերտացն ըզպարարտութիւն քո ի սուրբ վերնատանն. ողորմեա: Որ առաքեցար ի Հօրէ. կենդանարար վտակ և լոյս ճշմարիտ. արբուցանելով նոքօք որդւոց Սիովնի զուղխըս փրկութեան. ողորմեա: Որ կա-տարեցեր ըզփափագ ցանկութեան սրտից նոցա. որք ըսպասեալ մընային մեծի գալըստեան քո ի սուրբ վերնատանն. ողորմեա:

Որ ի թեւըս թեթեւս. աննիւթ սաւառնեալ եւ հրա-ցայտըղ սերովբէից վերանըստեալ տեսչութեամբ խնա-մես զարարածս. ‖ Հոգիդ սուրբ. օրհնեալ ես յա-րարածոց քոց: Որ սքանչելապայծառ. հրաշալի ծա-նիւ ընդ Հօր և ընդ Որդւոյ միշտ փառաբանիս. ի քաղցրութեամբ հայիս յարարածս. Հո: Այսօր աստուա-ծային տեսչութեամբ. ի վերնատանն հընչեաց հողմա-ձայն հընչմամբ. եւ զառաքեալսն արբուցեալ բաշխեցեր յարարածս. Հո:

ԱՊ. Որ տիրականս առ ի քէն կարգեալ տընտե-սութեան մերոյ. իմաստութեամբ ըզպարտիս եթող քո-յոց պարտապանաց. թող և ըզմեր ըզյանցանս ‖ ողոր-մութեամբըդ քո Քրիստոս: Որ զպատմուճանն առաջին զոր զգեցուցեր օծմամբ Հոգւոյն. մերկացաք մեղօք ըստ նախահօրըն պատրանաց. զգեցո ըզնոյն վերըստին ողոր-Ցաստուածային կայծակունսն ի սրովբէիցն անհըրդե-

լին. անմաքրապէս մերձեցաք գոլ պարտապան քում խորհրդոյն. շնորհեա ըզնոյն մաքրութեամբ ի թողութիւն մեղաց մերոց։ Որ վառեցար ի յարփւոյն եւ ոչ կիզար ըստ մորենւոյն. այլ եւ տուր զհացըն կենաց կերակուր բանաւորաց. բարեխօսեա առ Քրիստոս ջընջել ըզգիր մեղաց մերոց։

Ըզհայրն երկնաւոր. օրհնեցէք ընդ հրեշտակս որ միայն է թագաւոր փառաց։ ԶՈրդին միածին. զօրհնութեամբ բարեբանեցէք որ եկն և փրկեաց ըզմեզ։ Զմխիթարիչ սուրբ զհոգին. ամենայն շունչք բարեբանեցէք որ լուսաւորեաց ըզմեզ։

Տն. Հոգի իմ յամենայն ժամ զքեզ փառաւորէ. Տէր վասըն զի լոյս են հրամանըք քո ի վերայ երկրի։ Հոգի քո սուրբ եւ բարի. զէն ինձ Քրիստոս եղիցի յամենայն ժամ. ընդդէմ թշնամւոյն հակառակողին։ Հոգւոյն սըրբոյ հովանացեալ զքեւ Աստուածածին մաքրացեալ Հօր հաճութեամբ. զՈրդին միածին մեզ ի փրկութիւն։

Այսօր Գաբրիէլ ցընծութեամբ երգեաց սըրբոյ կուսին աւետիս բերկրեաց ասելով. որ ծընաւ ըզփրկիչ անձանց մերոց։ Անբաւելին երկնի եւ երկրի. ի կուսական արգանդէ մեզ կեանք յայտնեցաւ. Աստուած այցելու մարդկան։ Յառաջընթաց փայլումըն լուսատեսիլ աստեղն. մոգուցըն հետեւելով նշանին. ի ծընունդ Աստուածորդւոյն։

Անըսկըզբնական Բանին Հօր բընակարան. տաճար եւ առագաստ տեղի անտանելի լուսոյն. զքեզ ըմեծացուցանեմք արըժանապէս երգով Աստուածամայր եւ կոյս։ Յորմէ կենդանատեղծեալք յանեղէն հաստեցան ամենայն եղականքս. անսերմնապէս տը-

ղայացաւ յորովայնի քում. եւ ծընաւ առ ի քէն մար-
մնացեալ Աստուածըն ըմբոլորից. || զքեզ ըմեծացու-
ցանեմք արժանապէս երգով Աստուածամայր եւ
կոյս: Յորժամ զարհուրեալ դողային դասք վերին զը-
ւարթնոցն. տըղայապէս առ ընկալեալ բարձեր ի
գիրկս. եւ արբուցեր որպէս մայր ըստացողին ըզքեզ
ըզկուսական քո սուրբ ըզկաթն. զքեզ:

ԽԶ. Ի խաչանիշ փայտէն դըղըրդեցան դըժոխք.
զօրութեամբ սուրբ Հոգւոյն նորոգեցաւ երկիր. ո՞վ է ա
|| որ խափանեաց ըզմահ: Հրեշտակն աւետէր կուսին
Մարիամու. սա է ի սկըզբանէ Բանն որ յառաջ քան
զյաւիտեանս Որդին. սա է Թագաւորն որ: —Փառք
Հօր: Յարեաւ եւ յաւուր երրորդի վէմըք պատառեցան
երկիր շարժեցաւ սասանեցան դըժոխք. սա է կենդա-
նին յաւիտենից Քրիստոս:

—Այժմ և միշտ: Որ փառակից ես Հօր և Որդւոյ.
եւ քննես ըզխորս Աստուծոյ. առ յոյր խորագէտ
իմաստից զյիմարս աշխարհի արարեր Հոգի Աստու-
ծոյ ողորմեա:

---

## ՅԱՐԱՒՕՏՈՒ

### ՀԱՐՑ ԴԿ

Ո՛ր անքննելինդ ես յէութեան համագոյ Երրորդու-
թիւն. երեքսըրբեան մի տէրութիւն միով բնութեամբ
աստուածութիւն. || ըզքեզ բարեբանեմք Աստուած
հարցըն մերոց: Ո՛ր ես պատճառ Որդւոյ ծնընդեամբ
Հայր յառաջ քան զյաւիտեանս. յորմէ Հոգին ճառագայ-
թեալ աննորին բաժանմամբ. ըզքեզ: Ո՛ր էակից ես
Հօր Որդի լոյս ի լուսոյ ծագումն անճառ. անեղակից
սուրբ Հոգւոյդ Հօր եւ Որդւոյ հաւասար. ըզքեզ:

Գ. ԸզՏէր օրհնեցէք || բարձր արարէք զըղղխեալն

ի Հօրէ ։ Այսօր ամենայն հոգիք բանաւորաց . սուրբ զՀոգին ճշմարտութեան որ բոցանման լեզուօք անհեղագոյն սաստիկ հողմոյ հնչմամբ իջեալ ի յերկնից . օրհնեցէք ի ձայն գոհութեան բարձր ։ Այսօր քահանայք եկեղեցւոյ . սուրբ զՀոգին կենդանարար որ բաշխէ առատապէս զբազմապատիկ պարգեւս յեկեղեցիս արդարոց . գովեցէք հոգեւոր երգով բարձր ։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԴԿ

Զքեզ Աստուածածին . աղբիւր անսպառ լուսոյն ։ 282 ։

ՈՂՈՐՄԵԱ ԴԿ

Աղբիւր կենաց բաշխող շնորհաց Հոգին իջեալ ի բարձանց . զանապական պարգեւըս քո բաժանեցեր յառաքեալսն ։ Որ ի վերայ ջուրցըն գոլով ստեղծանէիր զարարածս . իջեալ ի ջուրս աւազանին ծնանիս որդիս Աստուծոյ ։ Որ զարդարեալ նորոգես միշտ ըզնոր քո զեկեղեցի . պէս պէս շնորհաց քոց պարգեւօք փայլեն մանկունըք սորա ։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԴԿ

Հոգիք հրեղինաց . այսօր տօնեն ընդ մեզ ըզզալուստ Հոգւոյն Աստուծոյ ։ Տեսանողն յառաջ . նըշանակէր զառատարուղխ վտակ իմաստից ի մեզ հեղեալ ի Հոգւոյն ։ Վէմըն հաւատոյ . զմայլեալ անմահական բաժակաւն . այսօր բաշխէր ծարաւեաց ։ Գետոցս այս գնացիւք . ցընծայ քաղաքն Աստուծոյ Սիովն մայր եկեղեցի ։ Վասն որոյ և մեք . երրեակ և մի աստուածութեանն երգեմք ըզփառս ի բարձունս ։

Զհնի Սուրբ Աստուածն ՍԱՂՄՈՍ ԽԴ . Է Բէ–

48 . Վասն այսորիկ օծ զքեզ Աստուած, Աստուած քո, իւղով ուրախութեան առաւել քան զընկերս քո ։

Փխ . Բղխեսցէ սիրտ իմ զպատգամս բարիս ։ 359 ։

Ալէլուիա . ալէլուիա ։

Digitized by Google

Ընթերցուած յառաջին Թագաւորութեանց : ԺԶ . 12 :

Եւ ասէ Տէր ցՍամուէլ . արի օծ զԴաւիթ , զի դա է բարի ։ Եւ ա՛ռ Սամուէլ զեղջիւրն իւղոյ , և օծ զնա ի մէջ եղբարց իւրոց ։ Եւ խաղաց Հոգի Տեառն ի վերայ Դաւթի յօրէ յայնմանէ և առ յապա . և յարեաւ Սամուէլ և գնաց յԱրիմաթեմ . և Հոգի Տեառն վերացաւ ի Սաւուղայ , և խեղդէր զնա այս չար ի Տեառնէ ։ 14 ։

Ընթերցուած ի Զաքարիայ մարգարէէ : ԺԲ · 8 :

Եւ եղիցի յաւուր յայնմիկ պաշտպանեսցէ Տէր ամենայն բնակչաց Երուսաղեմի . և եղիցի որ տկարն իցէ ի նոսա յաւուր յայնմիկ՝ իբրև զԴաւիթ , և տունն Դաւթի իբրև զտունն Աստուծոյ , իբրև զհրեշտակ Տեառն առաջի նոցա ։ Եւ եղիցի յաւուր յայնմիկ խնդրեցից բառնալ զամենայն ազգս եկեալս ի վերայ Երուսաղեմի , և հեղից ի վերայ տանն Դաւթի և ի վերայ բնակչաց Երուսաղեմի Հոգի շնորհաց և գթութեան ։ Եւ հայեսցին առ իս փոխանակ կաքաւելոյն , և կոծեսցին ի վերայ նորա կոծ իբրև ի վերայ սիրելւոյ , և աշխարեսցեն աշխար իբրև ի վերայ անդրանկան ։ 10 ։

Պօղոսի առաքելոյն ի Գաղատացւոց թղթոյն է
ընթերցուածս : Դ . 1 :

Զայս ասեմ . ցորքան ժամանակս ժառանգն տղայ է . չէ ինչ առաւել քան զծառայն , թէպէտ և տէր իցէ ամենեցուն . այլ ընդ հազարապետօք է և ընդ գաւառապետօք՝ մինչև ի ժամանակակէտ հօրն . Նոյնպէս և մեք մինչ տղայքն էաք , ընդ տարերբք աշխարհիս ի ծառայութեան կայաք ։ Այլ իբրև եկն լրումն ժամանակին , առաքեաց Աստուած զՈրդին իւր՝ որ եղև ի կնոջէ , և եմուտ ընդ օրինօք . զի զնոսա որ ընդ օրինօքն իցեն՝ գնեսցէ , զի մեք զորդեգրութիւն ընկալցուք ։ Եւ զի էք դուք որդիք , առաքեաց Աստուած զՀոգի Որդւոյն իւրոյ ի սիրտս մեր , որ աղաղակէ աբբա , հայր . այսուհետև չես ծառայ , այլ որդի . եթէ որդի , և ժառանգ Աստուծոյ ։ 7 ։

Զայնի– Ալէլուիա . ալէլուիա . ալէլուիա .

Որպէս իւղ զի իջանէ ի գլուխ և ի մօրուսն Ահարոնի , ի մօրուացն իջանէ ի գրապանս զգեստու նորա ։

Digitized by Google

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի ։ Ա․ 18 ։

Տեառն մերոյ

Յիսուսի Քրիստոսի ծնունդն էր այսպէս ։ Խօսեալ ըզմայր Նորա Մարիամ Յովսեփու, մինչև եկեալ առ միմեանս՝ գտաւ յղացեալ ի Հոգւոյն սրբոյ ։ Եւ Յովսէփ այրն նորա, քանզի արդար էր, և ոչ կամէր առակել զնա, խորհեցաւ լռելեայն արձակել զնա ։ Եւ մինչ դեռ Նա զայս ածէր զմտաւ, ահա հրեշտակ Տեառն ի տեսլեան երևեցաւ Նմա՝ և ասէ․ Յովսէփ՝ որդի Դաւթի, մի՛ երկնչիր առնուլ առ քեզ զՄարիամ կին քո․ քանզի որ ի նմայն ծնեալ է՝ ի Հոգւոյն սրբոյ է․ ծնցի որդի, և կոչեսցես զանուն Նորա Յիսուս․ զի Նա փրկեսցէ զժողովուրդ իւր ի մեղաց իւրեանց ։ 21 ։

Նշէ․ Խաւարն ։ Քոր․ Խնդր ։ Կեցո ։ Աշ․ Քում ամենա ։

---

Յ Ե Ր Ե Կ Ո Յ Ի Ն

ՍԱՂ․ ԽԴ․ Կ8․ Վլասն այսօրիկ ։ Փխ․ Բղխեսցէ ։ 359 ։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Յովհաննու ։ Ա․ 29 ։

ԶՏէրն մեր Յիսուս Քրիստոս

Ի վաղիւ անդր տեսանէ (զՅիսուս) զի գայր ։ 788 ։

ՀԱՄԲԱՐՁԻ ԳԿ

Ջանսկզբնաբար բղխումն ։ Վերջ տուն ։ 796 ։

ՍԱՂՄՈՍ ՃԼԲ

Կ8․ Որպէս իւղ զի իջանէ ի գլուխ և ի մօրուսն Ահարոնի, ի մօրուացն իջանէ ի գրապանս զգեստու Նորա ։

Փխ․ Զի՞ բարի կամ զի՞ վայելուչ, զի բնակեն եղբարք ի միասին ։

Որպէս իւղ զի իջանէ ի գլուխ և ի մօրուսն Ահարոնի, ի մօրուացն իջանէ ի գրապանս զգեստու Նորա ։

Որպէս ցօղ զի ցօղէ ի Հերմոնէ, ի վերայ լերին Սիոնի ։

Անդ պատրաստեաց Տէր զօրհնութիւն, և զկեանս յաւիտենից ։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի ։ Ա․ 18 ։

Տեառն մերոյ

Յիսուսի Քրիստոսի ծնունդն էր այսպէս ։ տես ի վեր ։

Քարոզ. Գոհաբանելով: Կեցո: Աղօթ. Խաղաղութեամբ:

---

# ՀԻՆԳՇԱԲԱԹԻ · ԳԿ

## ՀԻՆԳԵՐՈՐԴ ՕՐ ՊԵՆՏԵԿՈՍՏԷԻ



### Ի ԳԻՇԵՐԻ

### ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԳԴ

Զանըսկըզբնաբար բըղխումն ի Հօրէ զՀոգին ճըշմա-
րիտ. որ հընչմամբ ձայնի էջ ի վերնատունն այ-
նըման սաստիկ հողմոյ. || զոր փառաւորեմք հոգեւ-
որ երգով: Զհամագոյակիցըն Հօր եւ Որդւոյ զբաշխօղն
շնորհաց. որ ի հրեղէն լեզուս բաժանեալ զբանն ըճ-
մարտութեան լեզուաց շնորհեաց սուրբ առաքելոցն. զոր:
Զաղբիւրն իմաստութեան ըզկատարեալն աննմանու-
թեամբ. որ խօսեցաւ յօրէնս և ի մարգարէս եւ յաւե-
տարանս. զոր:

† Այսօր ցընծան դասք առաքելոցն գալըստեամբ
Հոգւոյն Աստուծոյ. զոր մըխիթարեաց փոխանակ բա-
նին մարմնացելոյ եղեալ ընդ նոսա. || փառըս տայ
նըմա սըրբասաց ձայնիւ: Այսօր բըղխեաց ջուր կեն-
դանի յԵրուսաղէմ յորմէ լըցան գետք աստուածայինք.
եւ ընթացեալ արբուցին տիեզերաց զքառավըտակ աղ-
բիւրն Եդեմայ. փառըս:

ԱԳ. Օրհնեմք ըզքեզ անըսկիզբըն Հայր Որդւոյ
միածնի. զոր առաքեցեր ի դարձումըն մոլորեալ ոչխա-
րին. դարձո եւ զմեզ ի մեղաց Որդւով քո չարչա-
րանօք: Գովեմք ըզքեզ Բան եւ լոյս որ զտիրական
քո պատկեր լուսով ծրագրի քո զըտեալ վերականգնե-
ցեր. կանգնեա եւ զանկեալքըս մեղօք քոյին սուրբ
չարչարանօք: Բարեբանեմք զփառակիցըդ Հօր զՀոգին

ճշմարիտ. որ նորոգեցեր ըզհնացեալքս մեղօք հընոյն Ադամայ. նորոգեա և զմեզ ի մեղաց նորոգութեամբ Հոգւոյ շնորհաց։ Ուրախացիր բարձրեալդ հովանացեալ զօրութեամբ և բնակարան սուրբ Հոգւոյն որով ծընար զԲանն Աստուած. բարեխօսեա վասն մեր Աստուածածին Մարիամ։

Զանըսկիզբն Աստուած զՀայրն ամենակալ. բարեբանեցէք ընդ զուարթունս երկնից։ Զառ ի Հօրէ ծընեալ Որդին միածին. բարեբանեցէք հրեշտակային ձայնիւ։ Եւ զնորոգող սուրբ զՀոգին ձայնիւ ցընծութեամբ. բարեբանեցէք անլռելի ձայնիւ։

Անըսկիզբն Աստուած և թագաւոր երկնաւոր. բարեբանեալ ի զօրաց անմահից երկնաւորաց. ըզքեզ օրհնեմք Հայր անըսկիզբն։ Խոնարհեցար ի բարձանց վասն մերոյ փրկութեան արձակիչ կապելոց և բժիշկ հոգւոց մերոց. ըզքեզ գովեմք Որդի միածին։ Որ էակից ես ընդ Հօր և փառակից Միածնի բաշխող պարգեւաց և տուող ողորմութեան. ըզքեզ բարեբանեմք սուրբ Հոգի ճշմարիտ։

Ծն. Որ ըզհուր աստուածութեան քո Քրիստոս. բորբոքեցեր ընդ տիեզերս ամենայն. բոց ցանկիզեալ ըզբռնութիւն թըշնամւոյն։ Ի յայգւոյն անմահութեան Եդեմայ. ճաշակեցին դասք առաքելոցն. զբաժակ կենաց քոյ Տէր և մեզ արբուցին։ Զտաճար անապական Բանին Հօր. բարեբանեն դասք հոգեղինացն. գովեմք և մեք ձայնակցելով երկնայնոցն։

Աստուածատունկ խընկաբեր ծառ յանուշահոտ բուրաստանէն որ ի գնացս Հոգւոյն վըտակաց տընկեցար. և զանմահութեան պըտուղն ի ժամու ետուր մեզ. վասն որոյ ամենեքեան ըզքեզ միշտ մեծացուցա-

նեմք։ Զանմատչական բողբոջն. յանստուածային դրախտէն յորովայն քո տընկեալ բղխեցեր յարմատոյ Յեսսեայ ծաղիկ վայելուչ կուսական ծնընդեամբ. վասն որոյ ամենեքեան ըզքեզ միշտ մեծացուցանեմք։ Յարփւոյն լուսոյ ծագումն ի քեզ վառեալ ըզճրագ մարմնոյ լոյս աշխարհի որով զտեալ զպատկերն իւրական զոր վերըստին նորոգեաց յառաջին կերպարանն. վասն որոյ բարեխօսեա նորոգել ըզմեզ ի հնութենէ մեղաց։

ԾՆ. Ծառ կենաց տընկեալ յադին սուրբ կոյս. որ ըզհայրածինն բղխեցեր զծաղիկ եւ ետուր ի ժամու զՈրդին պտուղ մարդկան. զորոյ զմարմինն ճաշակեալ անմահացան յաւէտ. ‖ վասն որոյ օրհնաբանեմք ըզքեզ յաւուր քո ծնընդեանն։ Բանաւոր երկիր Տէրուհի եւ անդաստան մաքուր ի փշոց մեղաց որ ըզբոյս երկնային առանց սերման ծընար. որով զկենացն ետուր ըզհաց սովեալ բնութեանս. վասն։ Աթեթեւ յերկրային ցանկութեանց սուրբ կոյս եւ վառաբան աստուածային բոցոյն որ ըզցօղն հայրաբուղխ անձրեւեցեր ի բանական երկիր. որով բնութեան բուսան արդարութեան սուրբ բոյսք. վասն։

ՀՆ. Լեառըն վիմածին աղբիւր յորդառատ. բանակ ծաղկեալ այգի վայելուչ սրովբէ հողեղէն. բարունոյ Բանին տուն տնօրէնութեան տաղաւար Հոգւոյն. ‖ առ ծնեալն ի քէն միշտ բարեխօսեա անդադար հայցմամբ. շնորհել զթողութիւն մեր նընջեցելոցն։ Փափկութեան դրախտին բացող բանալի. Քրիստոսի բարձող նըմանող երկնից. սափոր ոսկեղէն ի մանանային. գաւազան ծաղկեալ յարմատոյն յեսսեան. տաճար լուսոյ մայր. առ։ Ցօղ քաղցրածաւալ ցանկալի զուարթնոցն. նիւթեղէն սրովբէ գեղ մարգարտափայլ։

ին եկեղեցւոյ. մաքուր անդամնի ամպ հովանաւոր
ուրբ կոյս Մարիամ. առ ։

ՄՍ. Աստուածածին խորան լուսոյ. անվայրափակ
որփւոյն կենաց որ եղեր արեւելք արեգականն ար-
դարութեան. եւ նստելոցս ի խաւարի լոյս ծագեցեր.
վասն որոյ ամենեքեան ըզքեզ միշտ մեծացուցանեմք ։
Անապական տաճար. եւ մորենի անկիզելի որ զան-
էջն հուր աստուածութեանն ի քեզ տարեալ կրե-
եր. որով բնութեանս կիզեալ շիջաւ կրից բոց. վասն ։
— Փառք Հօր ։ Կենդանի տապանակ. կտակարանաց
որոյ ուխտին որով ելաք յերկիր աւետեաց հորդեալ.
Հոգւով ի քեզ տըպաւորեալ Բանին. վասն ։
— Այժմ և միշտ ։ Այսօր ցօղով իմանալեաւ յամպոյ
Հոգւոյն զուարթացան բոյսք եկեղեցւոյ. պարարտա-
ցան դաշտք արդարութեամբ եւ գեղեցկացան անա-
պատք մաքուր կուսութեամբ. փառըս տայցուք նըմա
երրորդաց ձայնիւ ։

ՅԱՐԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԲԿ

Անեղանելիդ Աստուած եւ եղեւ լոյս էակ. որ առա-
քեցեր յաշխարհ զանեղականից քո զՀոգիդ ի փառս միա-
ծնի Որդւոյ քո. ‖ օրհնեալ ես Տէր Աստուած հար-
ցըն մերոց ։ Ծագումն ի Հօրէ անճառ ծընընդեամբ.
որ ճոյր մըխիթարիչ առաքելոց քոց սըրբոց զՀոգիդ
քո տիրական գոլով. օրհնեալ ։ Հոգիդ Աստուծոյ անեղ
էութիւն. կատարեալ անձնաւորութեամբ և կատարող
ամենեցուն ընդ Հօր և ընդ Որդւոյ միաւորեալ բնու-
թեամբ. օրհնեալ ։

Գ. ԸզՏէր Ամենայն հոգիք զՀոգին սուրբ գովե-
ցէք զէակիցն Հօր և Որդւոյ. երեքսըրբեան ձայնիւ ։

Ըզհուրն երկնային զարկեալ Թոնիրն յերկիր բոռնաւոր․ որ մըկըրտեաց այսօր զառաքեալսն ի սուրբ վերնատանն ‖ ամենայն հոգիք զհոգին սուրբ գովեցէք զէակիցն Հօր և Որդւոյ․ երեքսրբեան ձայնիւ։ Զելողն ի Հօրէ զանատարբուղխ աղբիւրն իմաստից․ որ խօսեցաւ ընդ հին և նոր օրէնս Աստուծոյ․ ամենայն։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԲԿ

Ուրախ լեր մայր լուսոյ Մարիամ․ երկիր բա։ 222։

ՈՂՈՐՄԵԱ ԲԿ

Իջեր Տէր ողորմութեամբ քո յաշխարհ․ և ըզմեռեալ բնութիւնս ի կեանս վերափոխեցեր։ Իջեր Տէր որ Հայր փառաց ի յերկիրս․ և մխիթարիչ առաքելոցն առաքեցեր սուրբ զհոգիդ։ Բացեր Տէր մեզ ըզգանձդ երկնային․ և բաշխեցեր աստուածպէս պարգևս աղքատ բնութեանս։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԲԿ

Այսօր աղբիւր գիտութեան բըղխեալ ի սուրբ վերնատունն․ յորմէ լըցան տիեզերք գնացիւք գետոյ ոռոգմամբ։ Այսօր իջեալ ի յերկիր․ Հօր աւետիք բարձանց․ տալ աւետիս Ադամայ դառնալ յեդեմ էրըստին։ Այսօր խընդայ նոր Սիոն․ որդւովք իրովք զոր ծընաւ․ ծծմամբ Հոգւոյն նորոգեալ յորդի լուսոյ և տուընջեան։ Այսօր ի ձայն գոհութեան զհոգին ընդ Հօր և Որդւոյ․ հոգիք ամենայն օրհնեցէք զերեքսրբեանն երգելով։ Այսօր ցընծամք երկրաւորքս․ ընդ գալըստեան երկնայնոյն․ և պարելով ընդ հրեշտակս երգեմք ըզփառս ի բարձունս։

Զինի Սուրբ Աստուածին ՍԱՂՄՈՍ ԺԸ․ ԻԲ

կց․ Ցանկալի է նա քան զոսկի և քան զականս պատուականս բազումս, քաղցր է նա քան զմեղու խորիսխ։

Փխ. Երկինք պատմեն զփառս Աստուծոյ, և զարարածս ձեռաց Նորա պատմէ հաստատութիւն ։

Օր աւուր բղխէ զբան, և գիշեր գիշերի ցուցանէ զգիտութիւն ։

Ոչ են բանք և ոչ են խօսք, որոց ոչ լսին ձայնք նոցա ։

Ընդ ամենայն երկիր ել բարբառ Նոցա, մինչև ի ծագս աշխարհի են խօսք Նոցա ։

Ցարևու եհար զխորան իւր, և ինքն որպէս փեսայ լի ելանէ յառագաստէ իւրմէ, ցնծայ Նա որպէս սկայ յընթանալ զճանապարհս իւր ։

Ի ծագաց երկնից են ելք Նորա, հանգիստ Նորա մինչև ի ծագս Նորուն. և ոչ ոք իցէ որ Թաքիցէ ի տապոյ Նորա ։

Օրէնք Տեառն անբիծ են և դարձուցանեն զհոգիս. վկայութիւն Տեառն հաւատարիմ, և իմաստուն առնէ զտղայս ։

Արդարութիւնք Տեառն ուղիղ են և ուրախ առնեն զսիրտս, պատուիրանք Տեառն լոյս են և լոյս տան աչաց. երկիւղ Տեառն սուրբ է և մնայ յաւիտեան ։

Դատաստանք Տեառն ճշմարիտ են, և արդար է նոյն ։

Ցանկալի է Նա քան զոսկի և քան զականս պատուականս բազումս, քաղցր է Նա քան զմեղու խորիսխ ։

Քանզի ծառայ քո պահեսցէ զայս, ի պահել Նմա հատուցումն բազում ։

Զյանցուածս իւր ո՞վ կարէ առնուլ ի միտ. ի գաղտնեաց իմոց սուրբ արա զիս Տէր, և յօտարէն պահեա զծառայս քո ։

Ապա Թէ ոչ տիրեսցեն ինձ, յայնժամ անբիծ եղէց, և սուրբ եղէց ի մեղաց մեծաց ։

Եղիցին քեզ հաճոյ բանք բերանոյ իմոյ, և խորհուրդք սրտի իմոյ առաջի քոյ յամենայն ժամ, Տէր օգնական իմ և փրկիչ իմ ։

Ալէլուիա. ալէլուիա ։

### ԸՆԹերցուած յՈւլից ։ Լ. 22 ։

Խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի և ասէ. և դու առ քեզ խունկս անուշունս, ծաղիկ ընտիր զմըռնենեաց հինգ հարիւր սիկղ, և կինամոմոն զանոյշ զկէս այնորիկ՝ երկե-



Digitized by Google

րիւր և յիսուն, և զխունկեղէգն զանոյշ երկերիւր և յիսուն, և հիրիկ հինգ հարիւր սիկղ ըստ սրբութեանն, և իւղ ի ձիթենեաց հիմենաւ միով: Եւ արասցես զայն իւղ յօծումն սրբութեան, իւղ եփեալ ըստ արուեստի իւղագործաց, իւղ յօծումն սրբութեան լինիցի: Եւ օծցես ի նմանէ զխորան վկայութեանն, և զտապանակ վկայութեանըն և զսեղանն և զամենայն զկահ նորա, և զաշտանակն և զամենայն զկահ նորա, և զսեղան խնկոցն, և զսեղան ողջակիզացն, և զամենայն զկահ նորա, և զաւազանն և զյատակ նորա: Եւ սրբեսցես զնոսա, և եղիցի սրբութիւն սրբութեանց. ամենայն որ մերձենայցէ ի նոսա սրբեսցի: 29:

Ընթերցուած յԱռակաց: Իմաստ. Թ. 13:

Զի ո՞վ է մարդ՝ որ գիտիցէ զխորհուրդս Աստուծոյ. կամ ո՞վ ածիցէ զմտաւ թէ զինչ կամիցի Տէր: Զի խորհուրդք մահկանացուաց զանգիտօղք են, և զաղփաղփուն հնարագիտութիւնք մեր: Զի մարմին եղծանելի՝ ծանրացուցանէ զոգի, և հակէ հողեղէն յարկս զմիտս բազմահոգս: Եւ հազիւ նկատեմք զերկրաւորս, և որ ինչ առ ոտս կայցէ՝ աշխատութեամբ գտանեմք: Իսկ որ ինչ յերկինս է՝ ո՞վ քննեսցէ. և զխորհուրդս քո ո՞վ գիտաց, եթէ ոչ դու ետուր իմաստութիւն, և առաքեցեր զսուրբ Հոգիդ քո ի բարձանց: Եւ ապա ուղղեցան շաւիղք երկրաւորացս, և զհաճոյս քո ուսան մարդիկ, և իմաստութեամբ քով փրկեցան: Նա զնախաստեղծն՝ զհայրն աշխարհի զմիայն հաստատեալ պահեաց, և փրկեաց զնա ի յանցանաց իւրոց, և ետ նմա զօրութիւն ունելոյ զամենայն: Ժ. 2:

Ընթերցուած ի Գործոց առաքելոց: Ժթ. 1:

Եւ եղև՝ մինչդեռ Ապողոսն ի Կորնթոս էր, Պաւղոսի շրջեալ զվերին կողմամբքն՝ և իջանել յԵփեսոս, և գտանել զոմանս զաշակերտս. ասէ ցնոսա. եթէ Հոգի սուրբ ընկալարո՞ւք ի հաւատալն: Նոքա ասեն ցնա. այլ և ո՛չ թէ Հոգի սուրբ գուցէ՝ լուեալ է մեր: Եւ ասէ. իսկ յի՞նչ մկրտեցարուք: Նոքա ասեն. ի Յովհաննու մկրտութիւնն: Եւ ասէ Պաւղոս. Յովհաննէս քարոզեաց մկրտութիւն ապաշխարութեան ամենայն ժողովրդեանն, և ասէր, զի որ գալոցն է յետ նորա՝ ի նա հաւատա-

յեն, այս ինքն է՝ ի Յիսուս Քրիստոս: Եւ իբրև լուան,
կրտեցան յանուն Տեառն Յիսուսի: Եւ ի դնել ի վերայ
նոցա Պաւղոսի զձեռն, եկն Հոգի սուրբ ի վերայ նոցա.
խօսէին լեզուս և մարգարէանային, և էին ամենեքեան
որք իբրև երկոտասան: 7:

Ձայնն՝ Ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա.

Գնացք զետոց ուրախ առնեն զքաղաքն Աստուծոյ, և
սուրբ արար զյարկս իւր Բարձրեալն:

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Յովհաննու: Ի. 19:

Յետ յարութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի:

Եւ էր երեկոյ ի միաշաբաթւոջ աւուրն, և դրօք փա-
կելովք՝ ուր էին աշակերտքն ժողովեալ վասն ահին
Հրէից, եկն Յիսուս և եկաց ի մէջ նոցա, և ասէ ցնո-
սա. ողջոյն ընդ ձեզ: Իբրև զայս ասաց, եցոյց նոցա
զձեռս և զկողսն իւր. և խնդացին աշակերտքն իբրև
տեսին զՏէր: Ասէ ցնոսա դարձեալ. ողջոյն ընդ ձեզ.
որպէս առաքեաց զիս Հայր իմ, և ես առաքեմ զձեզ: Եւ
զայս իբրև ասաց, փչեաց ի նոսա և ասէ. առէք Հոգի
սուրբ. եթէ ումեք թողուցուք զմեղս, թողեալ լիցի նո-
ցա. եթէ զուրուք ունիցիք, կալեալ լիցի: 23:

Եղ՝ ձառագայթ: Քող. Խնդր: Կեցո: Աղ. Քում ամե:

---

ՅԵՐԵԿՈՅԻՆ

ՍԱՂ. ԺԸ. ԿՑ. Յանկալի է: Փխ. Երկինք: 800:

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի: Ա. 18:

Տեառն մերոյ

Յիսուսի Քրիստոսի ծնունդն էր այսպէս: Խօսեալ: 795:

ՀԱՄԲԱՐՁԻ ԴՁ

Անմահարար բաժակ հեղեալ յերկնից: Վեց թան: 804:

ՍԱՂՄՈՍ ԽԵ

ԿՑ. Գնացք զետոց ուրախ առնեն զքաղաքն Աստու-
ծոյ, և սուրբ արար զյարկս իւր Բարձրեալն:

Փխ. Աստուած մեր ապաւէն և զօրութիւն, օգնական
ի վերայ նեղութեանց որ գտին զմեզ յոյժ:

Վասն այսորիկ ոչ երկիցուք մեք ի խռովել երկրի, ի
փոփոխել լերանց ի սիրտ ծովու:

Digitized by Google

Գոչեցին և խռովեցան ջուրք նոցա, խռովեցան լերինք ի զօրութենէ նորա։

Գնացք գետոց ուրախ առնեն զքաղաքն Աստուծոյ, և սուրբ արար զյարկս իւր Բարձրեալն։

Աստուած ի մէջ նոցա՝ և նոքա մի՛ սասանեսցին, օգնեսցէ նոցա Աստուած ի վաղորդայնէ մինչ ի վաղորդայն։

Խռովեցան հեթանոսք, և խոնարհ եղեն թագաւորութիւնք. ետ զձայն իւր Բարձրեալն՝ և խռովեցաւ երկիր։

Տէր զօրութեանց ընդ մեզ, ընդունելի է մեր Աստուած Յակոբայ։

Եկայք և տեսէք զգործս Աստուծոյ, որ արար զնշանս և զարուեստս ի վերայ երկրի։

Եհար զպատերազմ ի ծագաց մինչ ի ծագս երկրի. զաղեղունս փշրեաց, զզէնս խորտակեաց և զասպարս այրեաց հրով։

Կանխեցէք և ծաներուք զի ես եմ Աստուած. բարձր եղէց ի հեթանոսս, և բարձրացայց ի վերայ երկրի։

Տէր զօրութեանց ընդ մեզ, ընդունելի է մեր Աստուած Յակոբայ։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Յովհաննու։ Ի. 19։

Յետ յարութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։

Եւ էր երեկոյ ի միաշաբաթւոջ աւուրն, և դրաց։ 803։

Քարոզ. Գոհաբանելով։ Կեցո։ Աղօթ. Խաղաղութեամբ

---

# ՈՒՐԲԱԹ · ԴԶ

## ՎԵՑԵՐՈՐԴ ՕՐ ՊԵՆՏԵԿՈՍՏԷԻ



### Ի ԳԻՇԵՐԻ

*ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԴԶ*

Անմահարար բաժակ հեղեալ յերկնից սուրբ հոգի զոր արբին ի վերնատունըն դասք սուրբ առաքելոյն. ‖ օրհնեալ ես սուրբ Հոգիդ ճըշմարիտ։ Առատապէս ծաւալեալ ի մեզ հուրըն կենդանի. քանզի արբեալ առաքելոցն եւ արբուցին տիեզերաց. օրհնեալ։ Ա-սոր մեծապէս ցընծան եկեղեցիք հեթանոսաց. ըղ.

մայլեալք ուրախութեամբ ի քէն կենդանարար բաժանկ . օրհնեալ ։

† Անըսկիզբն Աստուած սուրբ Հոգի . զմարգարէութեանց նախագուշակումն արտափայլեալ լուսազարդեցեր . || առատապէս հեղեալ յառաքեալսն ։ Անժամանակ Որդի միածին . ընդխոստացեալ պարգեւս աւետեացն ի վերնատունն աւարտեալ լըցեր . առաս ։

Առաքելոյ աղաւնոյ . իջանելով մեծաձայն հընչմամբ ի բարձանց . ի նմանութիւն լուսոյ փայլման հրազինեաց անկիզելի զաշակերտսն . մինչդեռ նըստէին ի սուրբ վերնատանն ։ Անիւթական աղաւնի . անքննելի որ քննէ ըզխորս Աստուծոյ . զոր առեալ ի Հօրէ պատմէ զահաւոր և ըզմիւսանգամ գալուստն . զոր քարոզեցին համագոյական ։ Օրհնութիւն ի բարձունս . ելողին ի Հօրէ Հոգւոյն սրբոյ . որով առաքեալքն արբեցան անմահական բաժակաւն . եւ հրաւիրեցին զերկիրս ի յերկինս ։

Ինքըն յինքեան . նոյն միշտ ընդ որըս դասեցաւ աներեւոյթ անժամանակ . անայլայլելի անփոփոխելի . || եւ միշտ օրհնեալ է ի յաւիտեան ։ Առանց որքանութեան . առանց որպիսութեան . առանց տեսութեան անչօշափելի . եւ միշտ ։ Տէր առաջիկ որոշիչ . տաճար առնէ ինքն ինքեան . առաջնորդէ զօրացուցանէ որպէս և կամի բաժանէ ըզշնորհըս . եւ միշտ ։

Համբարձաւ Տէրըն մեր յերկինս . ասելով աշակերտացն . նըստարուք ի քաղաքիդ յԵրուսաղէմ . մինչեւ զգենուցուք զօրութիւն ի բարձանց ։ Միաբանեալ սուրբ առաքեալքն . միախորհ եւ միակրօնքն . միաբան նըստէին ի սուրբ վերնատանն . եւ ակն

ծնէին զայլըստեան սուրբ Հոգւոյն ։ Յանկարծակի եհաս. ի նմանութիւն լուսոյ փայլմանցն. եւ եկեալ բնակեցաւ ի սուրբ առաքեալսն. մինչդեռ նըստէին ի սուրբ վերնատանն ։

Ընդ երկնայնոց հոգեղինաց դասուցն. հոգւոց սրբոց ծնողին երգեմք. ‖ փառք ամենապատուեալ է զալստեան Հոգւոյն սրբոյ ։ Ընդ առաքելոց խմբիցն այսօր զուարճացեալ վերագոչեմք Հոգւոյդ. փառք ։ Աստուածօր վերնատունս. Միածինն որդիք նորա երգեցէք ձայնիւ վերնոյն. փառք ։ Ի ձայն ցնծութեան ամենայն Հոգիք տացուք զմեզ նորոգողին ըղփանս. փառք ։

ԾՆ. Լոյս ի լուսոյ ի Հօրէ առաքեցար եւ մարմնացար ի սուրբ կուսէն. զի վերըստին նորոգեսցես զապականեալն Ադամ։ Դու Աստուած ի յերկրէ երեւեցար եւ ընդ մարդկան շրջեցար. եւ փրկեցեր զաշխարհս յանիծիցն Ադամայ ։ Քեզ ի յերկնից վկայեաց Հօր քո ձայն. սա է իմ որդի եւ սուրբ Հոգին զքեզ յայտնեաց աղաւնակերպ երեւմամբ ։

ՀՆ. Հայր անըսկիզբն արարիչ յաւիտենից առ քեզ կարդամք եւ պաղատիմք ‖ հանգո զնընջեցեալսըն ի սուրբ անուանդ քո ։ Որդի միածին. էակից եւ Հոգւոյ ի միասնական քո զալըստեանն հանգո. Հոգի ճըշմարիտ. փառակից Հօր եւ Որդւոյ. աղաչանք Աստուածածնին հանգո ։

ՄԾ. Անըսկիզբն Աստուած անհասանելի բնութեամբ եւ հանգուցեալ ի հրեղէն կառս. վասն որոյ գովելով ասեմք. օրհնեալ ես Հայր անըսկիզբն Աստուած ։ Մարգարտատեսիլ եւ ծիրանազգեաց հրաշափառագոյն կայզօր առեալ Որդւոյ վերափոխեալ դասեաց յանպատմելի կեանս. վասն որոյ գովելով ասեմք. օրհնեալ ես

Որդիդ միածին Աստուած ։ Անհասանելի Հոգւոյն գործութիւնն. որով փայլեալ համատարած լոյսն ըզկուսական անձամբն. վերափոխելով յանպատմելի և յանհասանելի և յանանց լոյսն. վասն որոյ բարեբանելով ասեմք. օրհնեալ ես Հոգիդ ճըշմարիտ Աստուած ։

Խզ. Լուսաւորեալ Երուսաղէմ. զարդարեալ զամուրըս քո. քանզի մերձեցաւ առ քեզ փեսայն երկնաւոր փըրկութիւն քեզ շնորհելով պըսակեանց սքանչելի փառօքն խորովք ։ Այսօր ծագեաց քեզ դըշխոյ գուստըր Սիոնի. արդարութեան արեգակըն Քրիստոս եւ սփռեցան ըզքեւ շընորհըք սուրբ Հոգւոյն մեծապէս պարգեւօք ։ —Փառք Հօր ։ Այսօր ցընծայ սուրբ Սիոն մայր եկեղեցի. փայլեցոյ զմանկունըս քո որպէս զարեգակն. զի անճառ խընդութեամբ լըցոյց ըզքեզ Քրիստոս թագաւորն ։

—Այժմ և միշտ ։ Ամենակալ Հայր երկնաւոր. զանբաժանելի լուսոյդ ըզծագումն հողեղինացըս շնորհեցեր. առատապէս հեղեալ յառաքեալսն ։

---

## ՑԱՌԱԻՕՏՈՒ

### ՀԱՐՑ ԱԿ

Անճառելի բըղխումն ի Հօրէ Հոգիդ ճըշմարիտ. այսօր ի վերնատանըն խորհըրդոյ խոնարհեալ հանգեար յառաքեալսն. ‖ Աստուած հարցըն մերոց ։ Անքըննելի խորոցդ Աստուծոյ քըննող ընդ Հօր միաւոր. այսօր ի հրեղէն թեւոցըն խոնարհեալ հանգեար յառաքեալսն. Աստուած ։ Անըսպառ աղբիւր լուսոյ սուրբ Հոգի. այսօր ի հրեղէն լեզուս բաժանեալ հանգեար յառաքեալսն. Աստուած ։

Գ. ԸզՏէր օրհնեցէք բարձր արարէք զՀոգին ճըշմարիտ ։ Որ անճառ խոնարհութեամբ հանգեաւ յա-

Digitized by Google

ռաքեալսն . պանծալի արփիափայլ պըսակ եղեալ է նոսա . ‖ բարձր արարէք զՀոգին ճըշմարիտ : Որ զանճառելի խորհուրդ Երրորդութեանն յայտնեաց նոցա . իմաստութեան աղբիւր կենդանի բըղխեալ է նոսա . բարձր :

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԱԿ

Նոր խորանիդ արեգականն արդարութեան : 566 :

ՈՂՈՐՄԵԱ ԱԿ

Որ ի հայրական խնկութենէն յառաջ բըղխեալ մըղ-բիւր լուսոյ . եւ ճառագայթարձակ լուսովըն ‖ զուար-ճացուցեալ լըցեր զառաքեալսն . աղաչանօք սոցա ո-ղորմեա : Որ զէութիւն քո հրեղինացն հիացմամբ ցուցեր . նոյն ինքն իմանալի աստուածային լուսովըն զուարճացուցեալ : Որ զաշխարհամած խաւարն ի սկըզ-բանն ի լոյս փոխեցեր . այսօր հրաշալի աստուա-ծային լուսովըդ զուարճացուցեալ : Որ հրաբորբոք ծաւա-լմամբ յառաջ խաղացեալ Հոգիդ ճըշմարիտ . եւ հրածո-րան աստուածային լուսովըդ զուարճացուցեալ :

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԱԿ

Որ ի հրացայտ սաւառնաթեւիցըդ վերանըստի . այ-սօր ի դասըս հողեղինաց անպատմելի սիրով հեղեալ ի յերկնից . ‖ օրհնեալ ես սուրբ Հոգի Աստուած : Որ ի հրեղէն լեզուացն եռահիւսակ սըրբաբանիս . այսօր ի չըրթունըս հողեղինացըն հրածորան հեղեալ ի յեր-կնից . օրհնեալ : Որ հրակերպիցն արփիափայլ բոցով միշտ երեւիս . այսօր հողեղինացըն հրաճաշակ բաժակ հեղեալ ի յերկնից . օրհնեալ :

Ձ՜նն Սուրբ Աստուածն ՍԱՂՄՈՍ Ծ . ԺԲ

Կ8 . Սիրտ սուրբ հաստատեա յիս Աստուած , և հո-գի ուղիղ նորոգեա ի փորի իմում :

Փխ . Ողորմեա ինձ Աստուած ըստ մեծի ողորմ : 415 : Ալէլուիա . ալէլուիա :

*Ընթերցուած ի Թուոց: ԺԱ. 24:*

Եւ ել Մովսէս և խօսեցաւ ընդ ժողովրդեանն զպատ-
գամս Տեառն. և ժողովեաց եօթանասուն այր ի ծերոց
ժողովրդեանն, և կացոյց զնոսա շուրջ զխորանաւն: Եւ
էջ Տէր ամպով, և խօսեցաւ ընդ Մովսիսի. և առ ի Հոգ-
ւոյն որ ի Նմա, և արկ զեօթանասուն արամբքն զծե-
րովք: Եւ իբրև հանգեաւ Հոգին ի վերայ Նոցա, և մար-
գարէացան ի բանակին, և այլ ոչ ևս յաւելին. և մնա-
ցին երկու արք ի բանակին. անուն միումն Եղդադ, և
անուն երկրորդին Մովդադ, և հանգեաւ ի վերայ Նոցա
Հոգին. և Նոքա էին ի գրելոց անտի և ոչ եկին ի խո-
րանն, և մարգարէացան ի բանակին: Եւ ընթացեալ
պատանի մի՝ պատմեաց Մովսիսի և ասէ ցնա. Եղդադն
և Մովդադն մարգարէացան ի բանակին: 27:

*Ընթերցուած յԱռակաց: Իմաստ. Զ. 11:*

Զի որք պահեցին սրբութեամբ զսրբութիւն՝ սրբես-
ցին, և որք ուսան զնոսա՝ գտցեն պատասխանատրու-
թիւն: Արդ ցանկացարուք բանից իմոց, փափաքեցէք՝
և խրատեսջիք: Լուսաւոր և անթառամ է իմաստութիւն,
և դիւրաւ երևի սիրողաց իւրոց, և գտանի խնդրողաց
իւրոց: Հասանէ առ ցանկացօղս իւր՝ առ յառաջագոյն
ճանաչելոյ: Որ կանխեաց առ Նա՝ ոչ վաստակեսցի, զի
դեգերեալ գտցէ զնա առ դրունս իւր: Քանզի և զմտաւ
ածել զնմանէ՝ կատարեալ իմաստութիւն է, և որ տքնի
վասն Նորա՝ վաղվաղակի անհոգ լիցի: Զի ինքնին շրջի
խնդրել զարժանաւորս իւր, և ի շաւիղս երևի Նոցա
քաղցրութեամբ, և յամենայն հնարագիտութիւնս պա-
տահէ Նոցա: 17:

*Պօղոսի առաքելոյն ի Հռովմայեցւոց թղթոյն է*
*ընթերցուածս: Ը. 2:*

Զի օրէնք հոգւոյն կենաց ի Քրիստոս Յիսուս ազատե-
ցին զիս յօրինաց մեղացն և մահու: Զի որ անհնարինն
էր օրինացն՝ որով տկարանայրն մարմնով, Աստուած
զՈրդին իւր առաքեաց ի Նմանութիւն մարմնոյ մեղաց և
վասն մեղաց, և դատապարտեաց զմեղս ի մարմնի անդ.
զի արդարութիւն օրինացն կատարեսցի ի մեզ, որք ոչ
ըստ մարմնոյ գնայցեմք՝ այլ ըստ հոգւոյն: Զի որք ըստ
մարմնոյն են՝ զմարմնոյն խորհին, և որք ըստ հոգւոյն՝

Digitized by Google

զհոգւոյն: Զի խորհուրդ մարմնոյ՝ մահ է, և խորհուրդ հոգւոյն՝ կեանք և խաղաղութիւն: 6:

Զայնիւ Ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա.

Հոգի քո բարի առաջնորդեսցէ ինձ ի յերկիր ուղիղ:

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Յովհաննու: Գ. 1.

Առ Տերամբ մերով Յիսուսիւ Քրիստոսիւ

Եւ էր այր մի ի փարիսեցւոց անուն Նիկոդեմոս անուն նորա, իշխան Հրէից. սա եկն առ նա գիշերի և ասէ ցնա. ռաբբի, գիտեմք թէ յԱստուծոյ եկեալ ես վարդապետ. զի ոչ ոք կարէ զայդ նշանս առնել՝ զոր դուդ առնես, եթէ ոչ Աստուած իցէ ընդ նմա: Պատասխանի ետ Յիսուս և ասէ ցնա. ամէն ամէն ասեմ քեզ, եթէ ոչ ոք ծնցի վերստին, ոչ կարէ տեսանել զարքայութիւն Աստուծոյ: Ասէ ցնա Նիկոդեմոս. զիա՞րդ կարէ մարդ ծնանել որ ծեր իցէ. միթէ մա՞րթ իցէ անդրէն յորովայն մօր իւրոյ կրկին մտանել և ծնանել: Պատասխանի ետ Յիսուս և ասէ. ամէն ամէն ասեմ քեզ, եթէ ոչ ոք ծնցի ի ջրոյ և ի Հոգւոյ, ոչ կարէ մտանել յարքայութիւն Աստուծոյ: Զի ծնեալն ի մարմնոյ՝ մարմին է, և ծնեալն ի Հոգւոյ՝ հոգի է: Դու մի՛ զարմանար, թէ ասացի քեզ, պարտ է ձեզ ծնանել վերստին. զի հողմ՝ ուր կամի շնչէ, և զձայն նորա լսես, այլ ոչ գիտես ուստի գայ կամ յո երթայ. սոյնպէս և ամենայն ծնեալն ի Հոգւոյն: 8:

Երգ Զհանդուրժեալ: Քար. խնդր: կեցո: Աշ. Քում ած:

---

ՑԵՐԵԿՈՑԻՆ

ՍԱՂՄՈՍ Ծ

Կ8. Սիրտ սուրբ հաստատեա յիս Աստուած, և հոգի ուղիղ նորոգեա ի փորի իմում:

Փխ. Ողորմեա ինձ Աստուած ըստ մեծի ողոր: 415:

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Յովհաննու: Ի. 19:

Յետ յարութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի:

Եւ էր երեկոյ ի միաշաբաթւոջ աւուրն և դրօք: 803:

ՀԱՄԲԱՐՁԻ ԴԿ

Ի հարաչարժ աղբերէն: Միջ տուն: 811:

ՍԱՂ. ԾԽԲ. ԿԹ. Հոգի քո: Փխ. Տէր լուր: 761.
Որբոյ Աւետարանիս որ ըստ Յովհաննու: Գ. 1:
Առ Տերամբ մերով Յիսուսիւ Քրիստոսիւ
Եւ էր այր մի ի փարիսեցւոց անուն Նիկոդեմոս: 810:
Քարոզ. Գոհաբանելով: Կեցո: Աղօթ. Խաղաղութեամբ:

---

# ՇԱԲԱԹ. ԴԿ

## ԽՕԹՆԵՐՈՐԴ ՕՐ ՊԵՆՏԵԿՈՍՏԷԻ

### Ի ԳԻՇԵՐԻ

#### ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԴԿ

Ի հրաշարժ աղբերէն. անհատահոսեղ վըտակ. կենդանանարար սուրբ Հոգի օրհնեալ ես լոյս ճըշմարիտ: Այսօր ի սուրբ վերնատունն եկեալ Աստուած ճըշմարիտ. հրաշազարդեալ զառաքեալսն ի լոյս փառաց քոց Հոգի: Հըրձուըղական խընդութեամբ. աշակերտացըն լըցեալ. փառաւորելով երգէին. օրհնեալ ես լոյս գերազանց:

† Ի համբառնալ Բանին յերկինս և ի նըստել ընդ աջմէ Հօր. զուարճացեալ առաքելոցն երկրըպագէին. ‖ օրհնելով ըզՀայր զառաքող Հոգւոյն: Համահաւաքեալ գունդըք սըրբոցն ի վերնատանըն խորհըրդոյ. համբարձմամբ անչափ սպասէին Հոգւոյն. օրհնելով:

Հոգիք հրեղինացն. այսօր տօնեն ընդ մեզ ըզգալուստ Հոգւոյն Աստուծոյ: Տեսանողն յառաջ. Նըշանակէր զառատաբուղխ վըտակ իմաստից ի մեզ հեղեալ ի Հոգւոյն: Վէմըն հաւատոյ. զմայլեալ անմահական բաժակաւն. այսօր բաշխէր ծարաւեաց: Գետոցս այս գնացիւք. ցընծայ քաղաքն Աստուծոյ Սիովն մայր եկեղեցի: Վասն որոյ և մեք. երրեակ և մի աստուածութեանն երգեմք ըզփառս ի բարձունս:

Աղբիւր կենաց բաշխող շնորհաց Հոգին իջեալ ի բար-

ձանց. զանապականն պարգեւըս քո բաժանեցեր յա-
ռաքեալսն: Որ ի վերայ ջուրցըն գոլով ստեղծանէիր
զարարածս. իջեալ ի ջուրս աւազանին ծնանիս որդի
Աստուծոյ: Որ զարդարեալ նորոգես միշտ ըզնոր ք
զեկեղեցի. պէս պէս շնորհաց քոց պարգեւօք փայլեն
մանկունըք սորա:

ՑԲ. Իջեր յերկնից Միածին անմեկնելիդ ի Հօրէ.
հովանացեալ սուրբ Հոգւոյն Բանըդ մարմնացար ի կու-
սէն: Եկիր ի չարչարանս չարչարանացըն լուծի-
ձեռք որ զերկինս արարին տարածեցեր ի խաչին:
Համբերեցեր վասըն մերոյ փրկութեան. ըզմեռեալնի
յանձն առեր կենդանատու մեռելոց:

ԱԳ. Օրհնեմք ըզքեզ անեղ անսկիզբըն Հայր. ան-
համանելի եւ փառաւորեալ. յանմարմնոց զինուորու-
թեանց: Գովեմք ըզքեզ Որդի Հօր արարչականից Բանդ.
նորոգող եւ կեանք ազգի մարդկան. թագաւոր յաւի-
տենից: Զքեզ բարեբանեն ամենայն ազինք. մըշտըն-
ջենաբուղխ անըսպառ աղբիւր. սուրբ Հոգիդ ճըշմար-
տութեան:

Մի աստուածութիւն Երրորդութիւն անբաժանելի
որ ի հրեշտակաց անդադար օրհնաբանիս: Անմար-
նոց զինուորութիւնք փառաբանեն ըզքեզ իշխան Հայր
Աստուած: Զօրեքկերպեան կենդանիքըն վայելուչ
աղաղակեն առ քեզ իշխանակից Որդի եւ Բանդ Աս-
տուած: Իշխանութիւնք աթոռոց գովեն ըզքեզ ա-
մենասուրբ Հոգի եւ բոլորից Աստուած:

ՀՆ. Հայր անսկիզբն բարեխնամ մարդասէր. որ
ստեղծիչդ ես հոգւոց եւ մարմնոց. յիշեա զննջեցեալ-
սըն մեր || եւ հանգո ընդ սուրբըս քո: Որդիդ միածին
որ զըթածդ ես առ ամենեսեան. եւ խաչիւ եւ արեամբ

զնեմցեր ըզքո ժողովուրդս․ յիշեա զգինս արեան քո
Տէր եւ հան։ Հոգիդ ճշմարիտ․ որ աղբիւրդ ես անըսպառելի․ եւ լըցուցիչ ամենայն բարութեանց․ յիշեա զննջեցեալսըն մեր եւ հանգո։

ՄԾ․ Որ անտես և անքըննին քառակերպիցըն վեհագոյն․ ի փըրկել ըզմեզ եկեալ անմահից թագաւորն․ օրհնութիւն առաքողին։ Առաքի հրեշտակապետն առ սերովբէն հողեղէն․ ասէ Տէրն և արարողն առաքեալն ի Հօրէ մարմնանայ ի քէն փըրկողն։ Մըկըրտի ի Յորդանան վըկայելով Հօր և Հոգւոյ․ ովսաննայ ի բարձունս երգէին մանկունքն օրհնութիւն որդւոյ Դաւթի։

ԽՉ․ Էջ Միածինն ի Հօրէ եւ լոյս փառաց ընդ նըմա․ ձայնիւք հընչեցին սանդարամետք անդընդոց։ Տեսեալ ըզլոյս մեծ հայրապետին Գրիգորի․ պատմէր ցընծութեամբ հաւատացեալ արքային։

— Փառք Հօր։ Եկայք շինեսցուք սուրբ ըզխորանըն լուսոյ․ քանզի ի սմա ծագեաց մեզ լոյս ի Հայաստան աշխարհի։

— Այժմ և միշտ։ Յանկարծահաս հընչմամբ հեղեալ կենդանարար աղբիւր լուսոյ․ անմահական կենաց լուսով զարդարեալ․ որք օրհնէին ըզհայր զառաքող Հոգւոյն։

---

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

### ՀԱՐՑ ԳՁ

Անեղանելի Հոգիդ սուրբ որ ես ընդ Հօր փառակից․ եւ էակից գոլով ծոցածին Բանին․ ‖ անհասանելիդ Աստուած հարցըն մերոց։ Որ ի քառակերպեան աթոռըդ բազմեալ հանգչիս․ եւ սըրբաբանեալ օրհնիս ի հրեղէն լեզուացն․ անհասանելիդ։ Այսօր մարդասիրա-

պէս աստուածարար իջեալ ի սուրբ վերնատանն. Եւ ըղձողջին լեզուս բաժանեալ հանգչելով ի նոսա. անճառանելիդ Աստուած հարցըն մերոց:

Գ. Ըղցէր օրհնեցէք. բարձր արարէք զշնորհն ումարհիս Աստուած: Զմխիթարիչ սուրբ Հոգին. որ փախան Միածնին իջեալ ի Հօրէ. որ հրաշագործեաց ըղսուրբ զառաքեալսն. բարձր: Զերկնային ծարաւոյ հեղեալ ի սուրբ վերնատանն. որ աստուածազարդ հրագինեաց ըղսուրբ զառաքեալսն. բարձր:

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԳՁ

Աստուածածին երկնային դուռն աստուածային: 379:

ՈՂՈՐՄԵԱ ԳՁ

Հոգիդ ճըշմարիտ. որ զաստուածային ըղհրամանն քո զանուածըն դուլթեան լուցեր. արբուցանելով զաշակերտացն ըղպարծարտութիւն քո ի սուրբ վերնատանն. ողորմեա: Որ առաքեցար ի Հօրէ. կենդանարար վըտակ և լոյս ճըշմարիտ. արբուցանելով նորօք որդի Սիոնի զուղխըս փափկութեան. ողորմեա: Որ կատարեցեր ըղփափագ ցանկութեան սըրտից նոցա. որ բաշխեալ մըտային մեծի զալըստեան քո ի սուրբ վերնատանն. ողորմեա:

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԳՁ

Որ ի թեւըս թեւթեւս. աննիւթ սաւառնեալ եւ հրացայտըդ սերովբէից վերանըստեալ տեսչութեամբ խնամես զարարածս. || Հոգիդ սուրբ. օրհնեալ ես յարարածոց քոց: Որ սքանչելապանծան. հրաշալի ձայնիւ ընդ Հօր և ընդ Որդւոյ միշտ փառաբանիս. Եւ քաղցրութեամբ հայրիս յարարածս. Հո: Այսօր աստուածային տեսչութեամբ. ի վերնատանն հընչեալ հողմաձայն հընչմամբ. եւ զառաքեալսն արբուցեալ բաշխեցեր յարարածս. Հո:

Զկնի Սուրբ Աստուածյն ՍԱՂՄՈՍ ԻԲ. է ՌԵ

ԿՑ. Ի վայրի դալարւոջ բնակեցոյց զիս, և առ ջուրս հանգստեան սնոյց զիս ։

Փխ. Տէր հովուեսցէ զիս, և ինձ ինչ ոչ պակասեսցէ ։
Ի վայրի դալարւոջ բնակեցոյց զիս, և առ ջուրս հանգստեան սնոյց զիս ։
Դարձոյց զանձն իմ առ իս, առաջնորդեաց ինձ ի ճանապարհս արդարութեան վասն անուան իւրոյ ։
Թէպէտ և գնացից ես ի մէջ ստուերաց մահու, ոչ երկեայց ի չարէ՝ զի դու Տէր ընդ իս ես ։
Ցուպ քո և գաւազան, նոքա մխիթարեսցեն զիս ։
Պատրաստ արարեր առաջի իմ սեղան, ակն յանդիման նեղչաց իմոց ։
Օծեր իւղով զգլուխ իմ, բաժակ քո որպէս անապակ արբեցոյց զիս ։
Ողորմութիւն քո Տէր, զհետ իմ եկեսցէ զամենայն աւուրս կենաց իմոց, բնակել ինձ ի տան Տեառն ընդ երկայն աւուրս ։
Ալէլուիա ալէլուիա ։

ԸՆթերցուած յԱռակաց ։ Իմաստ. Է. 21 ։

Զի ամենեցուն ճարտարապետն ուսոյց ինձ իմաստութիւն ։ Զի գոյ ի նմա հոգի մտաւոր, սուրբ, միածին, բազմարաշխ, նուրբ, դիւրաշարժ, պարզ, անարատ, յայտնի, անվրէպ, բարեսէր, երագ, անարգել, բարերար, մարդասէր, հաստատուն, զգուշաւոր, անհոգ, ամենազօր, ամենահայեաց և ամենայն իրաց բաւական՝ մտաւորաց, սրբոց, նրբից ։ 23 ։

ԸՆթերցուած յԵսայեայ մարգարէէ ։ ԺԱ. 1 ։

Եւ բղխեսցէ գաւազան յարմատոյն Յեսսեայ, և ելցէ ծաղիկ յարմատոյ անտի ։ Եւ հանգիցէ ի վերայ նորա հոգի Աստուծոյ, հոգի իմաստութեան և հանճարոյ, հոգի խորհրդոյ և զօրութեան, հոգի գիտութեան և աստուածպաշտութեան. և լցցէ զնա հոգի երկիւղի Աստուծոյ ։ Ոչ ի կարծ դատեսցի, և ոչ ըստ խօսից յանդիմանեսցէ ։ Այլ արասցէ իրաւունս տնանկին, և յանդիմանեսցէ զխոնարհս երկրի. և հարցէ զերկիր բանիւ բերանոյ իւրոյ, և հոգւով շրթանց իւրոց սատակեսցէ զամպարիշտս ։ Եւ եղիցի արդարութիւն ածեալ ընդ մէջ իւր, և ճշմարտութեամբ պատեալ զկողս իւր ։ 5 ։

*Յովհաննու առաքելոյն ի կաթուղիկեայց առաջին թղթոյն է ընթերցուածս : Դ . 1 :*

*Սիրելիք, մի՛ ամենայն հոգւոյ հաւատայք, այլ ընտրեցէք զհոգիսն եթէ յԱստուծոյ իցեն. զի բազում սուտ մարգարէք ելեալ են յաշխարհ. և մեք այսուիկ ճանաչեմք զՀոգին Աստուծոյ : Ամենայն հոգի որ խոստովանի զՅիսուս Քրիստոս մարմնով եկեալ, յԱստուծոյ է նա. և ամենայն հոգի որ ոչ խոստովանի զՅիսուս Քրիստոս մարմնով եկեալ, չէ նա յԱստուծոյ. և այս նեռինն է զորմէ լուարուքն եթէ գալոց է, և արդէն իսկ յաշխարհի է : Դուք յԱստուծոյ էք որդեակք, և յաղթեցէք նոցա. զի մեծ է որ ի ձեզդ է, քան զայն որ յաշխարհի է : Նոքա յաշխարհէ են, վասն այնորիկ յաշխարհէ խօսին, և աշխարհ լսէ նոցա : Մեք յԱստուծոյ եմք, որ զԱստուած ճանաչէ՝ լսէ մեզ, և որ չէ յԱստուծոյ՝ ոչ լսէ մեզ. այսուիկ ճանաչեմք զհոգին ճշմարտութեան, և զհոգին խաբէութեան : 6 :*

Զօղնէ— Ալէլուիա . ալէլուիա . ալէլուիա .

Ամբարձան գետք Տէր, և ամբարձին գետք զձայնս իւրեանց, յարիցեն գետք ի գնացս իւրեանց :

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու : Դ . 14 :

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

*Եւ դարձաւ (Յիսուս) զօրութեամբ Հոգւոյն ի Գալիլեա, և ել համբաւ զնմանէ ընդ ամենայն կողմանս գաւառին. և նա ուսուցանէր ի ժողովուրդս նոցա փառաւորեալ յամենեցունց : Եւ եկն ի Նազարեթ ուր սնեալ էր, և եմուտ ըստ սովորութեան իւրում յաւուր շաբաթու ի ժողովուրդն : Եւ ետուն նմա գիրս զԵսայեայ մարգարէի, և յարեաւ ընթեռնուլ. և իբրև եբաց զգիրսն՝ եգիտ զայն տեղի յորում գրեալն էր. Հոգի Տեառն ի վերայ իմ, վասն որոյ և օծ իսկ զիս. աւետարանել աղքատաց առաքեաց զիս, բժշկել զբեկեալս սրտիւ, քարոզել գերեաց զթողութիւն և կուրաց տեսանել, արձակել զվիրաւորս ի թողութիւն, քարոզել զտարեկան Տեառն ընդունելի : Եւ խփեալ զգիրսն՝ ետ ցպաշտօնեայն և նստաւ. և ամենեցուն որ ի ժողովրդեանն էին աչք ի նա հայէին : Եւ սկսաւ ասել ցնոսա. այսօր լցան գիրք այս յականջս ձեր : Եւ ամենեքին վկայէին նմա, և զար-*

մանայն ընդ բանս շնորհացն որ ելանէին ի բերանոյ նորա, և ասէին. ո՞չ սա է որդին Յովսեփայ: 22:

Եբ. Տէրն յետ: Քոչ. Խնդր: Կեցո: Աղ. Քում ամե:

---

## ՑԵՐԵԿՈՑԻՆ

ՍԱՂ. ԻԲ. ԿՑ. Ի վայրի: Փխ. Տէր հովուեսցէ: 815:

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Յովհաննու: Գ. 1:

Առ Տերամբ մերով Յիսուսիւ Քրիստոսիւ

Եւ էր այր մի ի փարիսեցւոց անուն Նիկոդեմոս: 810:

### ՀԱՄԲԱՐՁԻ ԴՁ

Հոգին սուրբ. էր միշտ և է եւ եղիցի. ոչ սկսեալ եւ ոչ դադարեալ. այլ միշտ ընդ Հօր և ընդ Որդւոյ կարգեալ և թըւեալ ‖ եւ միշտ օրհնեալ է ի յաւիտեան: Էր միշտ ընդունող. սրբող և լցուցիչ աստուածացուցիչ. եւ միշտ ընդ Հօր և ընդ Որդւոյ կարգեալ և թըւեալ եւ միշտ: Միշտաշարժ ինքնաշարժ. ինքնիշխան ինքնազօր ամենազօր. վասն զի շընչէ ուր կամի. յորքան ախորժէ. յորժամ և յորքան եւ միշտ: Ինքն յինքեան. նոյն միշտ ընդ որըս դասեցաւ աներեւոյթ անժամանակ. անայլայլելի անփոփոխելի. եւ միշտ: Առանց որքանութեան. առանց որպիսութեան. առանց տեսութեան անշօշափելի. եւ միշտ: Տէր առաջին որոշիչ. տաճար առնէ ինքն ինքեան. առաջնորդէ զօրացուցանէ որպէս և կամի բաժանէ ըզշնորհս. եւ միշտ: Կեանք և կենդանարար. լոյս և գոյացուցիչ լուսոյ. ինքըն բարի աղբիւր բարութեան հոգի ուղիղ առաջնորդական. եւ միշտ: Հոգի զօրութեան եւ երկիւղի. որով Հայր ճանաչի և Որդի փառաւորի. որոց մի կարգ. մի պատիւ. մի երկըրպագութիւն կատարելութիւն սրբութեան. եւ միշտ:

ՍԱՂՄՈՍ ՂԲ

Կց · Ամբարձան գետք Տէր, և ամբարձին գետք ըղձայնս իւրեանց . յարիցեն գետք ի գնացս իւրեանց ։

Փխ · Տէր թագաւորեաց վայելչութիւն զգեցաւ ։ 556։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Յովհաննու ։ Գ · 22 ։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Յետ այսորիկ եկն (Յիսուս) և աշակերտք նորա յերկիրն Հրէաստանի, և անդ շրջէր նոքօք հանդերձ և մկրտէր ։ Մկրտէր և Յովհաննէս ի Յայենովն, մերձ ի Սաղիմ, զի ջուրք բազումք էին անդ, և գային և մկրտէին ։ Զի չև ևս էր արկեալ Յովհաննէս ի բանտ ։ Եղև խնդիր յաշակերտացն Յովհաննու ընդ Հրէի՝ վասն սրբութեան . եկին առ Յովհաննէս և ասեն ցնա . Ռաբբի, որ էրն ընդ քեզ յայնկոյս Յորդանանու, որում դու վկայեցեր, ահաւանիկ նա մկրտէ և ամենեքին գան առ նա ։ Պատասխանի ետ Յովհաննէս և ասէ . ոչ կարէ մարդ առնուլ յանձնէ և ոչ ինչ, եթէ ոչ իցէ տուեալ նմա յերկնից ի վերուստ ։ Դուք ձեզէն վկայէք ինձ, զի ասացի ձեզ՝ թէ չեմ ես Քրիստոսն, այլ թէ առաքեալ եմ առաջի նորա ։ Որ ունի հարսն՝ նա է փեսայ, իսկ բարեկամ փեսային՝ որ կայ և լսէ նմա, ուրախութեամբ ուրախ լինի վասն ձայնի փեսային . արդ այս ուրախութիւն որ իմս է՝ լցեալ է ։ Նմա պարտ է աճել, և ինձ մեղմանալ ։ Որ ի վերուստն գայ՝ ի վերոյ է քան զամենայն, որ յերկրէ աստի է՝ յերկրէ է և յերկրէ խօսի ։ Որ յերկնիցն գայ, զոր ինչ ետես և զոր լուաւ՝ վկայէ, և զվկայութիւն նորա ոչ ոք ընդունի ։ Որ ընդունի զվկայութիւն նորա՝ կնքեաց, թէ Աստուած ճշմարիտ է . զի զոր Աստուածն առաքեաց՝ զբանս Աստուծոյ խօսի, զի ոչ եթէ չափով տայ Աստուած զՀոգին ։ 34 ։

Քարոզ · Գոհաբանելով ։ Կեցո ։ Աղօթ․ · Խաղաղութեամբ ։

# Ա·ԿԻՒՐԱԿԷ·ԱՋ
## ԶԿՆԻ ՊԵՆՏԵԿՈՍՏԷԻ
## ՏՕՆ
## ԱՄԵՆԱՍՈՒՐԲ
## ԵՐՐՈՐԴՈՒԹԵԱՆ

### Ի ԳԻՇԵՐԻ

ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԲԿ

Երրորդութիւնն անբաժանելի եւ զօրութիւն երկնային լոյս ծագեալ յաշխարհ. ‖ Նըմա. Հանգոյց զօրհնութիւնս երգով։ Որ էջըն յերկնից. այսօր եւ հանգեաւ յառաքեալսըն ճըշմարիտ սուրբ Հոգին. Նը։ Որ ի խորհուրդըս փըրկական. այսօր ընդ իջանել յառաքեալըն ծանուցաւ մարգարէին. Նը։

† Որ զմիաբանեալսն յաշտարակին բաժանմամբ։ 782։

[illegible]

Ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա.

Ողորմութեամբ Տեառն լի եղև երկիր, և բանիւ Տեառն երկինք հաստատեցան։

Եւ հոգւով բերանոյ Նորա ամենայն զօրութիւնք Նոցա։

Ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա.

Թևք աղաւնոյ արծաթապատ, և թիկնամէջք Նորա ի գոյն ոսկւոյ։

Ի գումարել երկնաւորին ի վերայ Նորա, ձիւնացին ի Սաղմոն։

Փառք և երկրպագութիւն։ Այժմ և միշտ. ալէլուիա։
Դասք հրեշտակաց օրհնեն զքեզ Քրիստոս. ալէլուիա։
Մարդկան ազգ սաղմոսեն քեզ. ալէլուիա։

---

### ՅԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԴԿ

Որ անքննինդ ես յէութեան համագոյ Երրոր։ 792։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԴԿ

*Զքեզ Աստուածածին. աղբիւր անսպառ լուսոյն:* 282:

ՈՂՈՐՄԵԱ ԱԿ

*Որ առաքեցար ի Հօրէ Հոգիդ անեղ և համագոյ:* 779:

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԱԿ

*Որ յերկնային զօրս անմարմնոցն նախ հեղեր:* 779:

Ա——— Եբֆ

*Զգալուստ Հոգւոյն օրհնեսցուք, զՀոգւոյն սրբոյ օրհնեսցուք զգալուստ:*

*Յեկեղեցիս բարեբանեցէք զԱստուած, և զՏէր յաղբերացն Իսրայելի:*

ՍԱՂՄՈՍ ԿԷ. ԺԴ

ԿՑ. *Թևք աղաւնոյ արծաթապատ, և թիկնամէջք նորա ի գոյն ոսկւոյ:*

Փխ. *Յարիցէ Աստուած և ցրուեսցին ամենայն:* 293:

Ընթերցուած յԱռակաց. Իմաստ: Է. 25:

*Քանզի ճաճանչ է Աստուծոյ զօրութեանն, և ծագումն ճշմարիտ փառաց ամենակալին. վասն այնորիկ և ոչ մի ինչ պղծեալ խառնի ի նա: Քանզի նշոյլ է մշտնջենաւոր լուսոյն, և հայելի անարատ Աստուծոյ ազդեցութեանն. և պատկեր առատութեան նորա: Մի է՝ և ամենայնի կարող, կայ յինքեան՝ և զամենայն նորոգէ, և ըստ ազգաց յոգիս սուրբս փոփոխի, բարեկամս Աստուծոյ և մարգարէս յարդարէ:* 27:

Ընթերցուած յԱնգեայ մարգարէէ: Ա. 14:

*Եւ զարթոյց Տէր զոգի Զօրոբաբելի որդւոյ Սաղաթիելի յազգէ Յուդայ, և զոգի Յեսուայ Յովսեդեկեայ քահանայի մեծի, և զոգի ամենայն մնացորդաց ժողովրդեանն. և մտանէին և գործէին զգործ տան Տեառն ամենակալի Աստուծոյ իւրեանց: Ի քսան և չորս ամսոյն վեցերորդի, յամին երկրորդի Դարեհի արքայի. յամսեանն եօթներորդի, որ օր քսան և մի էր ամսոյն, խօսեցաւ Տէր ի ձեռն Անգէի մարգարէի՝ և ասէ. ասա ցԶօրոբաբէլ որդի Սաղաթիելի յազգէ Յուդայ, և ցՅեսու Յովսեդեկեայ քահանայ մեծ, և ցամենայն մնացորդս ժողովրդեան. ո՞ր ի ձէնջ տեսեալ իցէ զտունս զայս ի փառաւորութեան իւրում զառաջինն, և որպէս արդ տե-*

սանէք զդա՝ որպէս զոչինչ առաջի ձեր ։ Եւ արդ զօրա-ցի՛ր դու Զօրոբաբէլ, ասէ Տէր, և զօրացի՛ր Յեսու Յով-սեդեկեայ քահանայ մեծ, և զօրասցի ամենայն ժողովուրդ երկրիդ, ասէ Տէր, և գործեցէք զի ես ընդ ձեզ եմ, ասէ Տէր ամենակալ ։ Եւ բանն զոր ուխտեցի ընդ ձեզ՝ յելանելն յերկրէն Եգիպտացւոց, և Հոգին իմ որ կայ ի միջի ձերում․ քաջալերեցարուք․ զի այսպէս ասէ Տէր ամենակալ ։ Բ․ 7 ։

Պօղոսի առաքելոյն ի կորնթացւոց առաջին թղթոյն է ընթերցուածս: բ. 11:

Զի ո՞ ոք ի մարդկանէ գիտէ ինչ զմարդոյն, եթէ ոչ հոգի մարդոյն որ ի Նմա․ Նոյնպէս և ոչ զաստուծոյսն ոք գիտէ, եթէ ոչ Հոգին Աստուծոյ ։ Այլ՝ մեք ոչ եթէ զհոգի աշխարհիս այսորիկ առաք, այլ զՀոգին որ յԱս-տուծոյ․ զի ծանիցուք զայն որ յԱստուծոյն շնորհեցաւ մեզ ։ Եւ զոր խօսիմքս՝ ոչ եթէ մարդկեղէն ուսմամբ ճարտարութեան բանից, այլ վարդապետութեամբ Հոգ-ւոյն՝ ընդ հոգևորս զհոգևորսն համեմատեմք․ քանզի շըն-չաւոր մարդ ոչ ընդունի զՀոգւոյն Աստուծոյ, զի յիմա-րութիւն է Նմա․ և ոչ կարէ գիտել՝ եթէ հոգեպէս քըն-նիցի․ իսկ հոգևորն քննէ զամենայն ։ 15 ։

Զայնէ– Ալէլուիա․ ալէլուիա․ ալէլուիա․

Հոգի քո բարի առաջնորդեսցէ ինձ ի յերկիր ուղիղ ։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Յովհաննու ։ Է․ 37 ։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Ի վերջնում աւուր մեծի տօնին կայր (Յիսուս) աղա-ղակէր և ասէր․ եթէ ոք ծարաւի իցէ, եկեսցէ առ իս և արբցէ․ որ հաւատայ յիս՝ որպէս և ասեն գիրք, գետք յորովայնէ Նորա բղխեսցեն ջրոց կենդանութեան ։ Զայս ասէր վասն Հոգւոյն զոր ընդունելոց էին որ հաւատա-յին ի Նա․ զի չև էր Հոգի, քանզի Յիսուս չև էր փա-ռաւորեալ ։ Ոմանք ի ժողովրդենէն իբրև լսէին զբանս զայս՝ ասէին․ սա է ճշմարիտ մարգարէն․ այլքն ասէին, սա է Քրիստոսն ։ Իսկ կէսքն ասէին․ միթէ ի Գալիլեէ՞ գալոց իցէ Քրիստոս․ ո՞չ գիրք ասեն՝ եթէ ի զաւակէ Դաւթի, և ի Բեթղեհէմ գեղջէ՝ ուր Դաւիթն էր, գալոց է Քրիստոս ։ 42 ։

Երգ․ Նորաստեղծ ։ Քոր․ Խնդր ։ Կեցո ։ Աղ․ Քում ամե ։

Digitized by Google

## Յ Ե Ր Ե Կ Ո Յ Ի Ն

### ՍԱՂՄՈՍ ԿԷ

ԿՑ. Թևք աղաւնոյ արծաթապատ, և թիկնամէջք նորա ի գոյն ոսկւոյ։

Փխ. Յարիցէ Աստուած և ցրուեսցին ամենայն։ 293։

### Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու։ Դ. 14.

### Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ դարձաւ (Յիսուս) զօրութեամբ Հոգւոյն ի Գալիլեա, և ել համբաւ զնմանէ ընդ ամենայն կողմանս գաւառին. և նա ուսուցանէր ի ժողովուրդս նոցա փառաւորեալ յամենեցունց։ Եւ եկն ի Նազարեթ՝ ուր սնեալ էր, և եմուտ ըստ սովորութեան իւրում յաւուր շաբաթու ի ժողովուրդն։ Եւ ետուն նմա գիրս զԵսայեայ մարգարէի, և յարեաւ ընթեռնուլ. և իբրև եբաց զգիրսն՝ եգիտ զայն տեղի յորում գրեալն էր. Հոգի Տեառն ի վերայ իմ, վասն որոյ և օծ իսկ զիս. աւետարանել աղքատաց առաքեաց զիս, բժշկել զբեկեալս սրտիւ, քարոզել գերեաց զթողութիւն և կուրաց տեսանել, արձակել զվիրաւորս ի թողութիւն, քարոզել զտարեկան Տեառն ընդունելի։ Եւ խփեալ զգիրսն՝ ետ ցպաշտօնեայն և նստաւ. և ամենեցուն որ ի ժողովրդեանն էին աչք՝ ի նա հայէին։ Եւ սկսաւ ասել ցնոսա. այսօր լցան գիրքս այս յականջս ձեր։ Եւ ամենեքին վկայէին նմա, և զարմանային ընդ բանս շնորհացն որ ելանէին ի բերանոյ նորա։

ՄԵՍԵԴԻ Յարութեան ԱՋ։

### ՀԱՄԲԱՐՁԻ ԲԿ

Երրորդութիւնն անբաժանելի և զօրութիւն։ 819։

### ՍԱՂՄՈՍ ԿԴ

ԿՑ. Գետոն Աստուծոյ լի եղև ջուրբ. պատրաստ արարեր զկերակուր նորա, զի այսպէս է պատրաստութիւն։

Փխ. Քեզ վայելէ օրհնութիւն Աստուած ի Սիոն։ 353։

### Սրբոյ Աւետարանիս որ ըստ Յովհաննու։ Է. 37։

### Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Ի վերջնում աւուր մեծի տօնին կայր (Յիսուս)։ 821։

Քարոզ. Գոհաբանելով։ Կեցո։ Աղօթք. Խաղաղութեամբ։

---

# Ա· ԵՐԿՈՒՇԱԲԱԹԻ· ԱԿ

## ՉԿՆԻ ՊԵՆՏԵԿՈՍՏԷԻՆ

## Ս· Հռիփսիմեանց

### Ի ԳԻՇԵՐԻ

### ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԴԿ

Անձինք նուիրեալք սիրոյն Քրիստոսի. երկնաւոր նահատակք եւ կուսանք իմաստունք. ի պարծանս ձեր բարձրացեալ տօնէ. մայր Սիոնի դստերօքն իւրովք: Բարբառոք երկնաւորք լցին զերկիր. քանզի հոտ անուշից բուրեցայք ի Քրիստոս. ողջակէզք բանաւորք եւ զոհք փրկութեան. եւ որպէս անարատք ընծայեալք Աստուծոյ: Գեղեցկութիւնք մարմնաւոր պայծառութեան ձերոյ. յիմարեցոյց ըզթագաւորն և պակեան հեթանոսք. ի զէն ըքանչելի աստուածատուր կուսանացն. տարփացեալ զըւարթունքն ընդ մարդկան տօնեցին: Դարձեալ վերստին արարչագործ զօրութեան. եւ դարձեալ Եդեմ աստուածատունկ զարդարի. քանզի ծառըն կենաց տընկեցաւ ի դրախտին. բերելով մեզ պտուղ զերանելին Հռիփսիմէ: Երկնինք մանկաբերք անծիցըն լուծան. եւ Ադամ վերստին աստուածակերպ ճոխանայ. փոխանակ Եւայի դստերքն նորա. մարտիրոսք եւ կուսանք ընծայեալք Աստուծոյ: Զօրք հրեշտակաց ընդ մարդկան տօնեցին. եւ կանայք ի յերկինս գրեցան զինուորք. կուսութեամբ ընդ մահու պատերազմեալք յաղթեցին. խաչակից լինելով կուսածին արքային: Է զարմացումն եւ ի վեր քան ըզհրաշս. խորհրդոց եւ բանից հրեշտակաց եւ մարդկան. քանզի է նոյն Աստուած ամենազօր զօրութեամբն. խոնարհեալ տեսանէր ըզհանդէս կուսանացն:

Digitized by Google

Ընկերըք միամիտք մարմնակայն կենցաղոյս. նահատակք հաւասարըք եւ հոգւով միացեալք. միաբան ընթացեալք ի տեղի ճակատու. զինեցան հաւատով և կացին յանդիման: Թուլացան կորովիք հաստաձիգ աղեղանց. եւ տըկար կանայքըն վառեցան զինու. թագաւորըն պերճացեալ զօրութեամբ և փառօք. ի մանուկ ի կուսէն պարտեալ ամաչէր: Ժողովեալ բազմութեան ազգաց եւ ազանց. ոչ զօրէին առ մի նահատակ. քանզի հասեալ ի թիկունս աներեւոյթ օգնութիւն. խորտակեաց յայտնապէս ըզգաղտնի պատերազմն: Ի վերայ միոյ պատուական մարգարտի. խաղացին ցընծալով ամենայն հեթանոսք. արեւմտեայք յարեւելս ընթացեալ հասին. քարոզել յայտնապէս ըզչըքնաղ տեսութիւնն: Լըւան թագաւորք եւ լըցան խընդութեամբ. որսալ յանձն առին ըզգաղտնի մեծութիւնն. պարգեւել իւրեանց խոստանային բանիւք. և ծածուկ հընարիւք գողանալ ի միմեանց: Խորհուրդ հոգեւորք յըղութեանցըն յայտնէր. եւ երկունըք փըրկութեան աշխարհի ճեպէին. քանզի կամըք վերին հրամանին քաղցրացեալ. իջուցին ի վերուստ ըզպարգեւըս փըրկութեան: Ծնան կուսանք ազգըս բազմաւ. եւ մարըք մանկունք ըզհրապարակըս ծերոց. ի գիրկըս սըրբութեան աղօթից եւ պահոց. աճեցին հաւատով զարգացեալք ի Քրիստոս: Կանայք պատուականք քաղաքաւ և ազգաւ. վաճառականք առաւ անյայտ մարգարտին. եդին զանձինըս գրաւականըս բազմաց. եւ եղեն փըրկանք անծանօթ աշխարհի: Հռիփսիմէ մեծ խորհուրդ և անուն ցանկալի. ընտրեալ ի յերկրի եւ դասեալ ընդ հրեշտակս. եղեր օրինակ սըրբութեան կուսանաց. վարդապետութիւն ա-

րանց արդարոց։ Զեզ նըմանել կարօտին ամենայն. հոգիք. միացեալըք սըրբութեամբ եւ սիրոյն Քրիստոսի. զի մահուամբ ձերով մեզ ճանապարհ հորդեցէք. ելանել ամենայն մարդոյ առ Աստուած։ Ղեկավարըք ճարտարըք հոգեւոր հըմտութեամբ թեթեւաբեռըն մարմնով եւ մըտօք սըլացեալք. ընդ երկայն ասպարէզս ծովածուփ կենցաղոյս. անվընաս նաւեցէք եւ հասէք առ Քրիստոս։ Ճըշմարիտ որթոյն Քրիստոսի շառաւիղք. եւ ողկոյզըք ճըմլեալք երկնաւոր մըշակին. կոխեցայք ճըգնութեամբ ի հընձանըս ձեր. զի ուրախ լինիցիք անմահական բաժակաւն։ Մերժեցին ըզկարիս մարմնական կենցաղոյս. զի ծանեան եթէ երազ է եւ սուտ պաճուճանք. ոչ հեշտացան ի գըրգանըս փափկութեան. իմացան եթէ սնոտի է անցաւոր մեծութիւնս։ Ցանգատանըս հոգեւորս աղօթից և պահոց. վաստակեալըք յուսով զամենայն ժամանակս. ժուժկալեալըք փորձութեանց եւ պէսպէս լըլկանաց. եւ եղեալք ժառանգորդք անթառամ պըսակին։ Նախանձելի յորինեցին զառագաստ կուսութեան. նոր նորոգեալ արեամբ եւ հրով. մատնեցին զանձինըս սուսերաց եւ ջահից. եւ անշէջ լապտերօքըն հետեւեալ մըտին յառագաստն։ Ծընուածք երկնաւորք ի յերկրի հաստատեալք. եւ արձանըք լուսեղէնք ի յերկինըս կանգնեալք. ինքեանք եղին եւ այլոց ցուցին ըզճանապարհըս ցանկալի զվերինն Երուսաղեմի։ Ով ըզգաստութեան իմաստուն կուսանացն որոց ոչ յաղթեաց հեղգութիւն եւ քուն. այլ արթունք եւ պատրաստըք մընալով երկնաւոր հարսանեացըն զի մըտցեն ի յառագաստ անմահ փեսային։ Զունի ոք ի նոսա անուն չարութեան. եւ ոչ նախատինըս յիմար կոչելոյ. քան-

զի միով զընդունութեամբ հոգւով որդւութեան. միայն քաջալցան անհամարակ ցընծացեն: Գառանկցեալք քաջալերեն բընութեամբ. ի յերկրէ ի յերկինս տարադէմ գընացին փախըստեայք. ինքեանք եղեն եւ մեզ ուսուցին. բազում նմանութեամբ մըտանել յայս հանդիսատն: Զերմեռանդն աղօթիւք եւ աղօթիւ առ Աստուած. հայցեցին ըզհընարըս փըրկութեան. բանալով ըզխաւար դիւապաշտ մոլորութեանց յաշխարհէ. պայծառացեալք լուսովն որ ի Հօրէ ծագեցաւ: Առաջինս յոլովս առաքինութեան. յայտնեցին որդւոց մարդկան վերանալ յաշխարհէ. անըստեղբեր հոգեւորականս վարուք. ելանել ի բանականս երկնաւորս անմարմին հրեշտակաց: Սոքա են քարինք սուրբ. հիմնացեալք ի յերկրի. զոր կանխաւ տեսեալ գուշակեաց մարգարէն. ի նոյն ի նիւթոյ շինեցաւ կաթուղիկէ եկեղեցի. բարձրացեալ փառօք ի պարծանըս խաչին: Վասն ձեր երանեալ նահատակք. զօրըք հրեշտակաց անձնամին զուարթնոցն. ի յերկնից ի յերկիր հեղան. և մարդիկք խառնեցան ի գունդըս զինուորաց Քրիստոսի Աստուծոյ: Տօնեցուք ըստուգութեամբ ի հընձանըս նոցունց. զի արբեալք լիցուք անմահական բաժակաւն. քանզի բաշխեն ըզըմբըժըշկութիւն հոգւոյ և մարմնոյ. եւ զպարգեւս երկնաւորըս սիրողաց իւրեանց: Բարունոյն հրամանաւ. աներեւոյթ անգմամբ. յարեւմըտից յարեւելս եկեալ հասին. զի լուսոյ հրեշտականկրօն վարուք կուսութեան փարատեցին ըզխաւար դիւապաշտ մոլորութեանցն: Ցընծութեամբ տօնեցուք ըզյիշատակըս նոցունց զի և նոցին հաղորդեսցուք փըրկութեան. խընդրելով յԱրարչէն ըզպարգեւս երկնաւորս. եւ զդասն ընդ նոսին ի յարքայ-

Digitized by Google

ուսեղէն ։ Իիւծեալըք մաշեցան յմուսացեալք ի մե-
ռութիւն . եւ կանանյք վեհազինք զերազանցեալք յաղ-
ծեցին . բուրուառք ոսկեղէնք հրով Հոգւոյն վառե-
լան . ջանհազգեստեալք ի Քրիստոս եւ դասեալք ընդ
իրեշտակս ։

Հգ. Աղբիւր կենաց բաշխող շնորհաց Հոգին իջեալ ի
արձանց . զանապականն պարգեւըս քո բաժանեցեր
առաքեալսն . Որ ի վերայ ջուրցըն գոլով սաւառնէիր
արարածս . իջեալ ի ջուրս աւազանին ծնանիս որդիս
Լուսոյ ։ Որ զարդարեալ նորոգես միշտ ըզնոր քո
եկեղեցի . պէս պէս շնորհաց քոց պարգեւօք փայլեն
անկունըք սորա ։

Հն. Խնդրեմք ի քէն Թագաւոր փառաց փառաւո-
րեալդ ի զուարթնոց . ‖ ըզննջեցեալըն մեր ընկալ
մարդասէր Տէր . եւ հանգո ընդ սուրբըս քո ։ Յորժամ
գաս փառօք Հօր դատել զերկիր արդարութեան արե-
ակն . ըզննջեցեալըն ։ Ի նըստել քո յատենի դա-
տաւոր անհեղ Քրիստոս փրկիչ մեր եւ յոյս . ըզնըն-
ջեցեալըն ։

ՄԾ . Հոյլք վերին զօրացն իջեալ շուրջ ըզկուսիւըն
կար առեալ . զերգս օրհնութեան եղանակեալ քաղցըր
ձայնիւ ակումբ առեալ . զեռահրեշտակըն նըւագեալ զմի
էրութիւնն երգաբանեալ ։ Ձայնակից նոցին եղեալ
ամբ երջանիկ պետացն ընտրեալ . ի Հոգւոյն վերաբե-
րեալ որք յընդհանուր աշխարհ սփռեալ . անմարմնոցն
համաձայնեալ ըզկոյսըն սուրբ օրհնաբանեալ ։ Ղամբա-
րափայլ ջահիւք լուցեալ սուրբ կուսանացըն գումարեալ .
երգս օրհնութեան նըւագեալ ի պատիւ մօրն ամենօր-
հնեալ . բարեբանեալ եւ կոյս զովեալ յորմէ Աստուած
ծանըն ծընեալ ։

ԽՁ. Խաչի՛ քո Քրիստոս երկրպագեմք արարածք ա-
մենայն. որ ի փրկութիւն մեզ կանգնեցաւ. ա... ե-
ղիցի մեզ պահապան յաղթող ‖ ամպրհցուցանել ըզթ...
ի պատրանաց Թշնամւոյն: Ի սմա բարձրացար բա-
զուկդ անիծից. որ փառաւորեալդ ես ընդ Հօր. ժողո-
վեալ ըզհեռացեալսըն կենսաբեր փայտիւն. ամպրհցու-
ցանել: Սովաւ լուսաւորեցան արարածք ամենայն.
սմա ... սպասէին արգելեալքն ի մեղսասէր բանտին ...
ազատեաց ըզմեզ ի պատրանաց Թշնամւոյն: — Փառք
Հօր և: Փառաց ի փառըս բարձրացեալ պարգևին. ի
պատիւ եւ ի փառս երեսուն և եօթեանըն. քանզի ...
է Թիւ երանեալ կուսանացն որք անթառամ պըսակի-
ցան յանվախճան յաւիտեանսն:

— Այժմ և միշտ: Քեզ որ ցընծութիւնդ ես Քրիս-
տոսի Աստուած. եւ ուրախութիւն ամենայն արդարոց.
քանզի գրեցին վասըն մեր աղաչանըք սըրբոցն. ...
հելով զթողութիւն մեր բազում յանցանաց:

Մաղթանք. Բարեխօսութեամբ սրբուհեաց:
Թագաւոր յաւիտենական մարտիրոսաց է ձայնն:

---

ՑԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԴԿ

Այսօր զանյաղթելի սըրբոյն Հռիփսիմեայ. ըզյիշա-
տակըս տօնէ սուրբ եկեղեցի. բարեբանելով ընդ ան-
մարմնական զինուորութեանն ‖ ըզՏէր Աստուած
հարցըն մերոց: Այսօր հրաւիրեցաւ յերկնից յարքա-
յութիւնըն սուրբն Հռիփսիմէ. եւ արիաբար ըզնշխա-
մարտեալ յաղթեաց բռնաւորին. խոստովանելով ըզ-
Քրիստոս Թագաւորն ըզ: Այսօր պայծառացեալ ի կա-
մարըս լուսեղէնըս սուրբն Հռիփսիմէ. եւ հրեշտակա-
նաց տօնողաց ուրոյց փառաւորել սուրբ զներորդու-
թիւնն ըզ:

Գ. ԸզՏէր ԸզՔրիստոս Թագաւորն ‖ օրհնեցէք ըզ-
ա Նոր երգով օրհնութեամբ։ Որ պայծառազգեաց
վայելչութեամբ. պըսակեաց ըզսուրբըն Հռիփսիմէ և
Գայիանէ. օրհնեցէք։ Որոց վարդագոյն հեղմամբ
ուրբ արեանցն. նորոգեաց զաշակերտեալսն ի ձեռըն
ըրբոյն Գրիգորի. օրհնեցէք։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԴԿ

Զքեզ Աստուածածին աղբիւր անսպառ լուսոյն։ 282։

ՈՂՈՐՄԵԱ ԴԿ

Քրիստոս Աստուած բացեր ըզդուըն հաւատոյ սըր-
բոյն Հռիփսիմեայ. խոստովանել զաստուածութիւնըդ քո.
արտիրոսութեամբ ի մէջ Հայաստանեայց։ Յաղթող զօ-
ութեամբ պայծառացեալ ի կամարըս լուսեղէնս ընդ
նմարմնոց բազմութիւնսն. խոստովանելով ըզՔրիստոս
ագաւորըն։ Ժողովեալքս հայցեմք. բարեխօսու-
թեամբ սըրբոց Հռիփսիմեանց. ընկալ եւ ըզմեզ փըրկիչ
որդեգրութիւն ի դըպրութեան կենաց։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԴԿ

Պարկեշտ կանայքըն սուրբըն Հռիփսիմեանք ե-
կեալն սիրողք Քրիստոսի եւ ընկալան զանապական
պըսակն։ Եղեն տաճար սըրբութեան Որդւոյն
տուծոյ շինեալք ի վերայ հիման առաքելոց եւ
մարգարէից։ Առաւել քան ըզլուսաւորս ի մէջ
տեղաց փայլեցին ի դասս հրեշտակաց զըստերք
րինն Երուսաղեմի։

Առաւօտու Երգ Մարտիրոսաց. Պարծեսցին սուրբքն։

Քարոզ. Աստուած մեծ հզօր և փառաւորեալ, լուսաւո-
չ սրբոց և ի սուրբս հանգուցեալ, զճգնութիւն սրբոց
իփսիմեանցն։

ՄԱՆԿՈՒՆՔ ԴԿ

Ցնծասցուք Քրիստոսի սըրբոց վըկայիցն. եկայք

զարեան վըտանկըն հոսեցին . խորհրդոցն ոչ խոտորումն և ոչ փոխադրութիւն բարուց . ծաղիկք նիւթեղէնք յաննիւթ ծաղիկըն յօդեցան . կատարեալք քաջութեամբ զչարին մուրհակըն կապտեցին ։ Հրով Հոգւոյն զինու վառեալք ըզհալածիչըն վանեցին . ձօնեցան զենմամբ սրոյ ի բանաւոր ողջակիզումն . զամբարմամբ լուսոյ կենաց զխաւար մեղաց փարատեցին . ճոխաբար հետեւեցան լուսաշաւիղ ընդ պողոտայն ։ Մեծարժեցին կործանեցին ըզմահահոտ ըզմեքենայսն . յաղթեցին կարեաց մարմնոյ և հեշտալի գըրգանաց . Նաւարկեալք հըմտաբար ընդ զրահեղեղ կռապաշտութեանն . շնորհազարդ փայլմամբ փայլեալք ի յերկնային նաւահանգիստն ։ Որոշեալք ի կրից կարեաց և ի Քրիստոս արձանացեալք . չարաչար չարչարանօք զչարին մուրհակըն կապտեցին . պատրաստեալք չարադնիւթիցն ղհրեղէն գետոցն ըզկիզմունս . Ջրոյն կենաց զետահետեալք ըղըղխեցին մեզ յարբուցումն ։ Ուստի գործեալք ի լուսաճեմ յաստուածակերտ ի խորանս . ըռրբափայլ զգեստուք զըննեալք ըստ զարդու Նոր Սիոնի . վերնառեալ վերնայօրէն ըզմարգարիտըն հաւատոյ . տենչացեալք անմահ լուսոյն վերբարձրացան ի կեանս անմահս ։ Բարուեայըն հրաշալեաց գըտցուք և մեք աշակերտեալք . յօղեցին մեր արտասուք ընդ ցօղ արեան նահատակացն . Միաւեացին թելք հոգւոց ընդ հիւսից պըսակելոցն . հալլեցեն գործք բարեաց ընդ լուսաթելիչ մարտիրոսանն ։ Քրիստոսի պըսակողին զաղօթանուէր ըզմաղթանս . զերանելեալ նահատակացըն մատուցուք ի յընծայումն . զի հաճութեամբ խոնարհեալ ընկալցի վարըն մեր . թողութիւն շնորհեսցէ մեր բազմում յանցանացն ։

Digitized by Google

Քարոզ Վասն խաղաղութեան : Աղօթք Հայր գթած : Փոխ Որ բնակեալ է : Մաղթանք Զբարձրեալն զՔրիստոս: Քարոզ Եւ մեք միաբան : Աղօթք Ցոյս կենաց : Հայր մեր: Եւ այլ խաղաղական :

# Ա· ԵՐԵՔՇԱԲԱԹԻ · ԲԶ

## Ս · Գայիանեանց

Զամենայն ինչ զՀռիփսիմեանցն առնուս : 823:

---

# Ա· ՉՈՐԵՔՇԱԲԱԹԻ · ԲԿ

## Պահոց

ԻՓ ԳԻՇԵՐԻ *ՕՐՀ.* Պահ. է ձայնէն *ԲԿ.* Ցամենայն ժամ: 115:
Մաղթանք Պահոց. *ԲԿ.* խաղաղութեանց տուող Քրիստոս Թագաւոր յաւիտենան Աղաչխարութեան :

ՑԱՌԱՒՕՏՈՒ *ՀԱՐՑ* Պահոց *Ա.Զ.* Որ Հայրս : 192:
Առաւօտու Եղէ Ես ասացի, Տէր : Քար. Փառաւորեսցուք:

*ՄԱՆԿՈՒՆՔ* Պահոց է ձայնէն *ԲԿ.* Արթունք : 127:
Զինչ մանկանց, Քարոզ Վասն խաղաղութեան ամենայն:
Աղօթք Սուրբ ես Տէր Աստուած մեր : Փխ. Բանից խեղ:
Մաղթանք խաչ քո: Քարոզ Աղաչեսցուք: Աղօթք Օգնեա մե:

ՑԵՐԵԿՈՅԻ *ՄԵՍԵԴԻ* Պահոց է ձայնէն *ԲԿ.* Քաղցրութիւն:
*ՀԱՄԲԱՐՁԻ* Պահոց է ձայնէն *ԲԿ.* Ցօգնութիւն : 127:

---

# Ա· ՀԻՆԳՇԱԲԱԹԻ · ԳԶ

## Ս · Յովհաննու կարապետին եւ Աթանագինեայ եպիսկոպոսին

### Ի ԳԻՇԵՐԻ

*ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԳԶ*

*Զմարգարէ բարձրելոյն. և զթագաւորին զինուոր· որ և ի ծնընդըս կանանց մեծ կոչեցաւ. ∥ յօրհնութիւնըս հոգևորըս պատուեսցուք : ԶՄիածնին կարապետ. և զբանին ըզձայն. որ յորովայնէ զՔրիստոս յայտնաՆ գուշակեաց. յօրհնութիւնըս : Զյանապատ բընակիչ և շընորհացըն քարոզող. որ և ի դըժոխս ըզ·*

Digitized by Google

փրկութիւն քարոզեաց. յօրհնութիւնս հոգեւորս պատ-
տուեսցուք ։

ԴԿ

Որ յորովայնէ ընտրեցար յԱստուծոյ. քարոզող ճշմարիտ Որդւոյն Աստուծոյ ‖ տէր Յովհաննէս. անդադար բարեխօսեա վասն անձանց մերոց ։ Որ յանապատէ կոչեցար ի Տեառնէ. մկրտել զբոլորից բարձողըն մեղաց. տէր ։ Որ զմարգարէիցն ընկալար զպատիւ. եւ զշնորհս ճշմարիտ սուրբ առաքելոցն. տէր ։ Որ մոլեգնութեամբըն Հերովդիայ ընկալար զվախճան. եւ ի դասս հրեշտակաց վերակարգեցար. տէր ։

ՀՐՇ. Այսօր ուրախացեալ սուրբ եկեղեցի Քրիստոսի. տօնէ խնդութեամբ զտօն վերին Երուսաղեմի. ‖ Սրբասաց ձայնիւ փառաւորելով զՔրիստոս ։ Այսօր համաձայնեալ որդիք Սիովնի երկրայնոյ. տօնիւ զուարճանան որդւոց անդրանկաց վերին Սիովնի. սրբասաց ։ Այսօր դասք անմարմնոցն երգս աւետեն պարեն ընդ մարդկան. զերգըս հոգեւորս յանմահ փեսային յառագաստ. սրբասաց ։

ՄՐԳ. Այսօր ցնծայ զուարճացեալ եկեղեցի հեթանոսաց. տօնելով զյիշատակ մեծի նահապետին եւ հօրըն հաւատոց Աբրահամու. օրհնեցէք մանկունք Սիովնի զհայրըն լուսոյ անլռելի ։ Այսօր Նոր Իսրայէլ. կոչեցեալ մարգարէիւքն առ Աստուած. տօնեա ցընծութեամբ զտօն հովուացն Իսրայելին առաջնոյ. գովելով զգլուխ անկեան երկուց որմոց յարմարութեան ։ Այսօր ի գլուխս լերանց. տուն Աստուծոյ հաստատեալ. որ և յաւէտ ոռոգիս յամպոց Հոգւոյն ա-



Digitized by Google

տուածաբուղխ առատահոս անձրեւօք. բարեբանեա
զաղբիւրըն կենաց զարբուցանողըն ծարաւեաց ։

ԳՐԻ. Այսօր զիմանալին լուսոյն ծագողն ի խաւարին
նըստելոցս. զԳրիգորիոս սուրբ հայրապետն || Եկայք
վերապատուեսցուք ։ Այսօր զանապական Հոգւոյն պար-
գեւս բաշխող որդւոց Թորգոմայ. յորդխս լուսոյ նորա-
ծընեալք եկայք ։ Այսօր զաստուածային բանին պաշ-
տօնեայ ի Հայաստան աշխարհի. աշակերտեալ նըմա ման-
կունք եկայք ։ Այսօր երգէ եկեղեցի որդւովք իւ-
րովք ընդ հրեշտակս. յիշատակի Լուսաւորչին փառաց
ի բարձունս Աստուծոյ ։

ՄԿՑ. Երանելի սուրբ մանկունքն որպէս քաջ նա-
հատակք ետուն զանձինս իւրեանց ի մահ. փո-
խանակ Որդւոյն Աստուծոյ ։ Եւ դիակունք սուրբ
մանկանցն որպէս ըզծաղիկ նորանշանեաց հարեալ ի
կարկտէ. և անկեալ ի սուրբ Բեթղեհէմ ։ Եւ
հոգիք սուրբ մանկանցն որպէս զերամս աղաւնեաց
թռուցեալ ի յերկինս. և դասեալք ընդ զուար-
թունս երկնից ։

ՀԳ. Աղբիւր կենաց բաշխող շնորհաց Հոգիդ իջեալ ի
բարձանց. զանապական պարգեւըս քո բաժանեցեր
յառաքեալսն ։ Որ ի վերայ ջուրցըն գոլով ստեղծանէիր
զարարածս. իջեալ ի ջուրս աւազանին ծնանիս որդիս
Աստուծոյ ։ Որ զարդարեալ նորոգես միշտ ըզնոր քո
զեկեղեցի. պէս պէս շնորհաց քոց պարգեւօք փայլեն
մանկունըք սորա ։

ՀՆ. Որ ի Հօրէ առաքեցար մարդասէր կարող Փըր-
կիչ. եւ ըզմեղուցեալ ըզմարդըն բըժըշկեցեր. || Ողորմեա
Տէր հրաժարելոյս զոր հրաւիրեալ առ քեզ կոչեցեր ։
Որ ի խաչին բեւեռեցար մարդասէր կարող Փըրկիչ.

Digitized by Google

եւ ընդ ցօղ անապական արեանըդ ցօղեցեր տիեզերաց. ողորմեա։ Որ ըզդըժոխս աւերեցեր և ըզգերեալըսն փըրկեցեր. եւ զարգելեալըսն վերածեր ի յոյս կենացըն յաւիտենից. ողորմեա։

ՄՏ. Ըզքեզ Աստուածածին. աղբիւր անըսպառ լուսոյն. որ լուսաւորէ զհաւատացեալս. || միաբանական ձայնիւ երգով մեծացուցանեմք։ Դու պարծանըք կուսութեան մարդկան. դու ուրախութիւն հրեշտակաց. դու բարձող անիծիցն. վասն որոյ ըզքեզ Աստուածածին. մեծացուցանեմք։ Դու ճըշմարիտ արեւելք. արեգականն արդարութեան. յորմէ ծագեաց փըրկութիւն տիեզերաց. միաբանական։

ԽԶ. Սուրբ զխաչ քո շնորհեցեր զէն եկեղեցւոյ քում սըրբոյ. որով դատապարտեալ պարտեցաւ Թըշնամին։ Սովաւ պահպանեա զժողովուրդս քո Քրիստոս. որով երկըրպագեմք քեզ ընդ Հօր եւ Հոգւոյն։

—Փառք Հօր։ Ի քեզ ապաւինիմք Քրիստոս որ գալոց ես խաչիւ. որպէս զի փըրկեսցես ըզմեզ յայնմ աւուր յահեղ ատենին։

—Այժմ և միշտ։ Որ մարգարէիցն իջեալ ի դըժոխս. աւետարանեցեր ըզգալուստ Որդւոյն Աստուծոյ. տէր Յովհաննէս. անդադար բարեխօսեա վասն անձանց մերոց։

Թագաւոր յաւիտեան մարդասիրութեամբ է ձայնէն առ. ԳԶ։

---

ՅԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԳԶ

Զուարճանայ այսօր եկեղեցի քո Քրիստոս. ի տօնախըմբել զոր յիշատակէ կարապետին քում Յովհաննու. տօնաւ ընդ քեզ միշտ օրհնեմք Աստուած հարցըն մերոց։ Որ մեծ ի ծնունդըս կանանց ի քէն վըկայեցաւ.

ի յորովայնէ մօր յառաջ զուշակեաց զանճառ քո զմարդե-ղութիւն. || սովաւ ըզքեզ միշտ օրհնեմք Աստուած հարցըն մերոց: Ցոր վեցթեւեանն սրովբէքն ոչ իշխէին հայել ի փառըս քո Քրիստոս. սա արժանաւորեցաւ ձեռ-նադրել ըզքեզ ի յորձանսըն Յորդանանու. սովաւ:

Գ. Ըզտէր || օրհնեսցէք եւ բարձր արարէք ըզնա յաւիտեանս: Զկարապետին Յովհաննու կատարելով ըզյիշատակս. անդադար ձայնիւ զԱստուած հայր օրհ: Զերանեալ Մկըրտչին մեծարելով ըզտօնս. հո-գեւորական ձայնիւ զՔրիստոս Թագաւորն օրհ: Յա-նապատի բարբառոյ ձայն եւ աւետաւոր արքայու-թեանն. ընդ նմին զճըշմարիտ սուրբ զՀոգին օրհ:

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԳՁ

Աստուածածին երկնային դուռն աստուածային: 379:

ՈՂՈՐՄԵԱ ԳՁ

Ճրագ ճըշմարտութեան սուրբ Յովհաննէս Մկըր-տիչ. որ ծագեցաւ ի յերկրի. || աղօթիւք սորա Տէ-ր լուր մեզ եւ ողորմեա: Մարգարէ եւ առաքեալ Աստուա-ծորդւոյն. եւ ձայն բարբառոյ ազդ արարող տիեզերաց· աղօթիւք: Որպէս զարուսեակըն ծագեալ ի յերկրի· եղեւ կարապետ արեգականն արդարութեան. աղօթիւք:

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԳՁ

Առաքեալըն յԱստուծոյ կարապետ. մեծն ի մարգա-րէս Մկըրտիչըն Յովհաննէս. պատրաստէր ճանապար-հ թագաւորին յաւիտենից: Վըկայեաց եւ ասէ. չեմ ես Քրիստոսն այլ առաքեալ եմ առաջի նորա. եւ հարսին եկեղեցւոյ փեսայ Քրիստոս է արքային երկնից: Տե-սանէր ըզՅիսուս զի գայր առ նա. աղաղակեաց եւ ասէ· ահա գառն Աստուծոյ որ եկն ի բառնալ ըզմեղս աշ-խարհի:

Առաօտու Երգ

Դու մանուկ մարգարէ բարձրելոյն կոչեսջիր. գնասցես առաջի Տեառն պատրաստել զճանապարհս նորա։

Տալ գգիտութիւն փրկութեան ժողովրդեան իւրոյ, ի թողութիւն ամենայն մեղաց մերոց։

ՄԱՆԿՈՒՆՔ ՆԻ ՀԱՄԲԱՐՁԻ ԴԿ

Մարգարէից գերագոյն. եւ մեծ ի ծնունդս կանանց. որ ըզտնօրէնութիւն Աստուածորդւոյն ի յարգանդի ծանեար հոգւով. ‖ աղաչեա զԱստուած վասն մանկանց եկեղեցւոյ։ Յորովայնէ յորովայն երկրպագող Քրիստոսի. որ ըզհուրն Աստուած մերով բնութեամբ մկրտեցեր ի Յորդանան. աղաչեա։ Կատարումն օրինաց. եւ նախակիզբն շնորհաց. որ հոգւովն ի դժոխս քարոզեցեր ըզփրկութիւն գալստեամբն Քրիստոսի. աղաչեա։

## Ա. ՈՒՐԲԱԹ. ԴԿ

Պահոց

Ի ԳԻՇԵՐԻ ՕՐՀ. Պահոց ԴԿ. Քրիստոս Աստուած։ 120։ Թագաւոր յաւիտեան Աղաշխարհաբնեան։

ՅԱՌԱՒՕՏՈՒ ՀԱՐՑ Հանգստ. ԱԿ. Գոհաբանեմք։ 132։ Առաօտու Երգ Մտցեն աղօթք իմ։ Տէր Աստուած։ ՄԱՆԿՈՒՆՔ Խաչէ է յայնէն ԳԿ։ 161։

ՅԵՐԵԿՈՅԻ ՀԱՄԲԱՐՁԻ Պահոց է յայնէն ԳԿ։ 129։

## Ա. ՇԱԲԱԹ. ԴՁ

Ս. Գրիգորի լուսաւորչի ելն ի վիրապէն



Ի ԳԻՇԵՐԻ

ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԲՁ

Ով երջանիկ տէր սուրբ Գրիգոր սրբութեանց պաշտօնեայ. եւ առաջնորդ բանաւոր հօտի։ Ընդ քեզ ու-

Digitized by Google

նիմըք բարեխօս առ Յիսուս միածինն. և աղաչեա վասըն քո ուխտաւորացս. կանխեալ խընդրեա ըզթողութիւն յանցանաց. ի քէն աշակերտելոցս։

Ով երանելի տէր սուրբ Գրիգոր Լուսաւորիչ ըզքեզ ունիմըք բարեխօս. առ Քրիստոս վասն անձանց մերոց։ Որ ի մոլութեանց բըռնաւորին ոչ զանգիտեցեր. ըզքեզ։ Որ ընդ անմարմնոցըն դաս վերակարգեցար ըզքեզ։

Դ Կ

Արմատ ճըշմարիտ աստուածային որի ծեծ ընացն. և հաստատութիւն հաւատոյ ազգի մարդկան Լուսաւորիչ տէր սուրբ Գրիգոր. ի մաղթողական աղօթս քո հայցեա վասըն մեր ի Քրիստոսէ։ Ընտրեալ յԱստուծոյ քահանայապետ ճըշմա ծեծ րիտ. և հովիւ հոգեւոր բանաւոր հօտի տէր։ Պըսակ վայելչութեան եկեղեցւոյ Քրիստո ծեծ սի. և առաջնորդ կենացըն յաւիտենից տէր։

† Որ քրիստոսանուէր կոչմամբըն ծագեցար որպէս զարե ծեծ գակն. և լուսաւորեցեր ըզՀայաստան աշխարհս աստուածգիտութեամբ Լուսաւորիչ տէր սուրբ Գրիգոր. անդադար բարեխօսեա վասն անձանց մերոց։ Որ քաջին առաքինանէր ճըգնու ծեծ թեամբդ. վերափոխեցար ի լուսեղէն յերկնային խորանն տէր։

ՂՆԴ. Արեգակն արդարութեան ի Հայաստան ծագեալ. պայծառացուցեր սուրբ զեկեղեցի հեղմամբ արեան սըրբոցն. Լուսաւորիչ մաղթանօք սոցա խընայեա ի մեզ պարգեւատու բարեաց. և ողորմեա քո արարածոց։ Պանծալի սուրբ զաւակօք հովիւքըն գըւարթունք. հըրով Հոգւոյն շիջուցին ըզգրոցն ըզկրակապաշտ Պարսիցն. մաղթանօք։ Պարթեւական տեսանողին յառաջագոյն ազդեցութեամբ. զհաւատոյ որդիս սըրբոյն Գրիգորի պըսակազարդ տեսեալ. մաղթանօք։

Գրի․ Որ կոչեցեր ըզհեռացեալքս ի հարսանիս քո Միածնին․ ըմպել զբաժակն իմաստութեան ի ձեռըն սըրբոյն Գրիգորի․ ‖ բարեխօսութեամբ սորա ողորմեա մեզ Աստուած։ Որ գերագոյն քան զըզբնութիւն չարչարանօք քո ընտրելոյն․ դարձուցեր ըզմոլորեալքս ի գիտութիւն ճըշմարտութեան․ բարեխօսութեամբ։ Որ ի վիրապն անդընդային ջաղխեր նովաւ զգլուխ վիշապին․ և զրի ներքնումն իջմամբ նորին բարձրացուցեր զմեզ ի յերկինս․ բարեխօսութեամբ։

Հգ․ Ի համբառնալ Բանին յերկինս և ի նըստել ընդ աջմէ Հօր․ զուարճացեալ առաքելոցն երկըրպագէին․ ‖ օրհնելով ըզհայր զառաքող Հոգւոյն։ Համահաւաքեալ գունդըք սըրբոցն ի վերնատունըն խորհըրդոյ․ համբարձմամբ աչաց սպասէին Հոգւոյն․ օրհնելով։ Յանկարծահաս հընչմամբ հեղեալ կենդանարար աղբիւր լուսոյ․ անմահական կենաց լուսով զարդարեալ․ որք օրհնէին ըզհայր զառաքող Հոգւոյն։

Հն․ Խընդրեմք ի քէն Թագաւոր փառաց փառաւորեալդ ի զուարթնոց․ ‖ ըզննջեցեալսըն մեր ընկալ մարդասէր Տէր․ և հանգո ընդ սուրբըս քո։ Յորժամ գաս փառօք Հօր դատել զերկիր արդարութեան արեգակն․ ըզննջեց։ Ի նըստել քո յատենի դատաւոր ահեղ Քրիստոս փըրկիչ մեր և յոյս․ ըզննջեց։

Մծ․ Աստուածածին սուրբ կոյս անապական տաճար․ անպարագիծ էին բոլորից բնութեանց լայնածաւալ տեղի․ այսօր ընդ երկրականն զուարթնոյն կրկնեցեր աւետեաց զՏէրըն տերանց ի քեզ․ առ որ մաղթեմք բարեխօսել վասըն մեր անլըռելի ձայնիւ։ Յիմանալի վտակաց տանն Աստուծոյ հոսմանց․ վիճակեալդ տեսանողացըն ձայնի որըմամբ ըզմայլեցար․

այսօր զանթառամըն ծաղկեցար ըզծաղիկ ի ժամու տա-
լով զպըտուղն · || առ որ մաղթեմք բարեխօսել վա-
սըն մեր անլըռելի ձայնիւ ։ Այսօր ի քեզ լըցեալ Ա-
մովսածնին բարբառ · որ ի փըրկութիւն հասարակաց
տուեալ Նըշան բընութեան ազգի մարդկան · ահա կոյ-
յըղասցի եւ ծընցի որդի զընդ մեզ յայտնեալն Աս-
տուած · առ որ մաղթեմք ։

ԽԶ · Էջ Միածինն ի Հօրէ եւ լոյս փառաց ընդ Նը-
մա · ձայնիւք հընչեցին սանդարամետք անդընդոց
Տեսեալ ըզլոյս մեծ հայրապետին Գրիգորի · պա-
մէր ցընծութեամբ հաւատանցեալ արքային ։
— Փառք Հօր ։ Եկայք շինեսցուք սուրբ ըզխորանըն
լուսոյ · քանզի ի սմա ծագեաց մեզ լոյս ի Հայաս-
տան աշխարհի ։

— Այժմ և միշտ ։ Քեւ պայծառացան եկեղեցիք
Քրիստոսի · փառաւորելով ըզմիածնական սուրբ
զԵրրորդութիւնն տէր սուրբ Գրիգոր · անդադար բա-
րեխօսեա վասն անձանց մերոց ։

[illegible]

---

## ՑԱՌԱՒՕՏՈՒ

### ՀԱՐՑ ԲՁ

Որ առաքեցեր ըզսիրելի եւ զհաւատարիմ քո պաշ-
տօնեայն ըզսուրբ Գրիգոր · եւ ի ձեռըն Նորա լուսա-
ւորեցեր ըզՀայաստան աշխարհս · || ըզքեզ միշտ օրհնեմք
Աստուած հարցըն մերոց ։ Որ ետուր համբերութիւն
անտանելի չարչարանաց սըրբոյն Գրիգորի · եւ Նորին
ժուժկալութեամբըն լուսաւորեցեր ըզՀայաստան աշ-
խարհս · ըզքեզ ։ Որ Նորին սուրբ աղօթիւք բարձեր
զխաւար կռապաշտութեան ի Հայաստան աշխարհէ · եւ

արարեր երկրպագուս ամենասուրբ Երրորդութեանդ. ըզքեզ։

Գ. Ըզ Տէր օրհնեցէք եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան։ Արդ եկայք հաւատացեալք և կոչեցեալք յորդեգրութիւն սըրբոյն Գրիգորի. օրհնեցէք եւ բարձր արարէք զԱստուածն ամենեցուն։ Ցընծութեամբ տօնեսցուք ըզյիշատակ հայրապետին մերոյ. եւ ընդ նըմին գովեցէք. եւ բարձր արարէք զթագաւորըն մեր Քրիստոս։ Քահանայք և պաշտօնեայք հոգեւորական հընչմամբ գովեցէք ընդ սըրբոյ հայրապետին. եւ բարձր արարէք սուրբ զհոգին ճըշմարտութեան։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԲՁ

Զկուսութիւնդ քո Աստուածածին անարատ զոր։ 303։

ՈՂՈՐՄԵԱ ԲՁ

Թիւնս իմ Բարեխօսութեամբ. քահանայապետին քո և վըկայի. կեցո զմեզ բազումողորմ։ Աղաչանօք. սըրբոյն Գրիգորի լուր մեզ. որ միայնդ ես բազումողորմ։ Նորին աղօթիւք. որով ուսաք ճանապարհ կենաց. քաւեա Տէր ըզյանցանըս մեր։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԲՁ

Առաջնորդ հաւատոյ. եւ լուսաւորիչ անձանց մերոց տէր սուրբ Գրիգոր. եկայք հաւատացեալք ‖ ի ձեռըն նորա հանցուք Աստուծոյ գոհութիւն։ Մեծ խոստովանողըն Քրիստոսի. եւ ըզչարչարանըս յանձն առող վասըն մեր. տէր սուրբ Գրիգոր. եկայք լուսաւորեալք ի ձեռըն։ Քահանայապետ Աստուծոյ եւ պատմող աստուածային օրինաց տէր սուրբ Գրիգոր. եկայք աշակերտեալք ընդ նըմա երգեսցուք փառք ի բարձունս Աստուծոյ։

ՄԱՆԿՈՒՆՔ ԴՁ

°Հրաշափառ Աստուած եւ միշտ բարեխնամող. որ

յանաւ է գիտութեամբ ըզփրկութիւն հայաստանեայց ըն-կըլզբնաւորեալ. ի պարթեւական մեղապարտ ազգէն լուսաւորիչ մեզ շնորհեցեր. || վասն որոյ բարեխօսու-թեամբ սորա փրկիչ կեցո ըզմեզ. այժմ եւ ի քո յա-հաւէր զանլռութեանն: °Հրաշալի զարմացմամբ երանե-լին սուրբ Գրիգոր. զանտանելի ըզչարչարանս ի յանձն էառ. եւ երիւք հընգօք ամօք ի մէջ թունաւորացն բնակէր. ահ նդընդային տանջանօքն ի վիրապին. վասն: °Հրաշագործ քո բանիւդ եւ մեծ զօրութեամբդ. ե-լեալ բըժըշկէր ըզհարուածեալսն ի դիւաբախ սաստից. երկըրպագուս առնելով զամենեսեան սուրբ Երրորդու-թեանդ. վասն:

---

## ՑԵՐԵԿՈՑԻՆ

Երգ Լոյս զուարթ: Մեսեդի կերոնորեց Սիրեցի:

ՀԱՄԲԱՐՁԻ ԴՁ

Որ կոչեցար յորդեգրութիւն հօր երկնաւորի ով երանելի տէր սուրբ Գրիգոր. եւ եղեր վըկայ ճըշմարիտ Քրիստոսի Աստուծոյ մերոյ || վասն ժողովըրդեան քո. հայցեա ի Տեառնէ ըզքաւու-թիւն: Որ համբերութեամբդ քո. ստացար քեզ ժողովուրդ սեպհական եւ ընտրեալս. եւ նորափե-տուր զարդարեցեր ծընընդեամբ սուրբ աւազա-նին. վաս: Որ մոլորելոցս ի խաւարի. բացեր զդուռն լուսոյ ճըշմարիտ աստուածգիտութեան. եւ արժանաւոր արարեր ըզմեզ ժառանգորդ լինել կենացն յաւիտենից. վաս:

Քարոզ. Վասն խաղաղութեան: Աղօթք. Հայր գթած: փոխ. Աստ օրհնեցէք: Զկնի Քարոզ. Խնդր: Կեցո [illegible]: Աղօթք. Թագաւոր խաղաղութեան: Հայր մեր:

---

## Բ · ԿԻՐԱԿԷ · ԴԿ ·
### ԶԿՆԻ ՊԵՆՏԵԿՈՍՏԷԻ
## ՏՕՆ ԵԿԵՂԵՑԻՈՅ



### Ի ԳԻՇԵՐԻ
#### ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԳՁ

Ուրախ լեր սուրբ եկեղեցի. քանզի Քրիստոս արքայն երկնից. այսօր պսակեաց ըզքեզ խաչիւն իւրով. եւ զարդարեաց զամուրս քո սքանչելի փառօքն իւրովք։ Խնդա յոյժ դուստր Սիոնի. քանզի երկիրս երկինք եղեն. այսօր վերնատունն քո նորոգմամբ. եւ թագաւորն երկնաւոր հաճեցաւ բընակիլ ի քեզ։ Ընդ դասս երկնաւոր զօրացն վերառեալ տօնեմք ըզքեզ այսօր զանդադար փառաւորութիւնս. ուրախ լեր հարսն անարատ անքըննին քո խորհրդով։

✝ Խորան սրբութեան կանգնեցաւ սուրբ եկեղեցի. եւ Քրիստոս թագաւորն ի սմա պատարագեալ. եկայք հաւատացեալք երգեսցուք Քրիստոսի երգ նոր։ Դասք հրեշտակացն վայր իջեալ յերկնից երգեն ասելով. հրաշալի ձայնիւն եղանակելով. երգեն զերգս օրհնութեան երրեակ սրբասաց ձայնիւ։

Այսօր հրեշտակաց բազմութիւնքն տօնակից լինին ընդ մեզ. քանզի երկնաւոր թագաւորն եկաւորէ ի սուրբ եկեղեցի։ Խնդա եւ զուարճացիր հարսնացեալդ յԱստուծոյ եկեղեցի. քանզի ըզքեզ Տէրն տէրանց ընտրեաց եւ հաճեցաւ բըն ակիլ ի քեզ։ Լուսաւորեա լուսաւորեա կաթուղիկէ եկեղեցի. քանզի ի քեզ շող աստուածեղէն ի Հօրէ լուսոյ ծագեաց. եւ լուսաւորեաց ըզմանկունս քո։

Որք արժանաւորեցայք ի կոչումն փառաւորութեան

Քրիստոսի Աստուծոյ մերոյ. Եկայք ժողովուրդք երգե-
ցէք Տեառն երգ նոր. Երգեցէսցուք զանուն նորա
ձայնիւ ցնծութեամբ յօրհնութիւն ի նորա: Զօրացեալք
ի քեզ Քրիստոս ժողովուրդք հաւատացելոց. ճշմարիտ
խոստովանութեամբ օրհնեմք զխորհուրդ աստուածային
կենսաբեր տնօրէնութեան քո. փառաւորեալ զաջա-
ւոր և ըսքանչելի անուն քո. Տէր Տէր ը մեծ ի
վերայ ամենայն երկրի: Ուրախ լեր եկեղեցի սուրբ.
հարսն երկնաւոր խորհրդոյն ի փառս ամենասուրբ
Երրորդութեանն. որ համագոյ իշխանութեամբն իւ-
րով. զարդարեաց ծագմամբ լուսոյ պսակեալ զքեզ. ի
պատրաստեալ ամենայն սրբովք ի վերովք:

Լուսաւորեա Երուսաղէմ զի հասեալ է լոյս քո. զար-
դարեա զամուրս քո. եւ փառք Տեառն ի վերայ քո
ծագեսցի: Օրհներգութեամբ սաղմոսիւք քեզ վայելէ
Աստուած օրհնութիւն ի Սիովնէ. եւ քեզ մատուցցի
աղօթք յԵրուսաղէմ: Գովեա Երուսաղէմ զՏէր. և
օրհնեա զԱստուած քո. որ նոր ժողովուրդ դշխոյ դու-
ստր Սիովնի:

Այսօր աստուածութիւնըն զուարճանայ նոր հաստա-
տելով զերկիր. պարք սուրբ փառաբանեն զզուարթնոց.
եւ մեք ձայնիւ օրհնութեամբ զարդարեսցուք սուրբ ըս-
տոնս: Այսօր եւ մեք ցնծամք տօնիւս ընդհանուր
հընչմամբ. մեծապէս փայլմամբ երեւեցաւ աշխարհի. առ
Աստուած գոհութիւնք ընթանան պատմեն անդադար
զբան կենդանի: Խնդա և զուարճացիր եկեղեցի
կոյս սուրբ և հարսն երկնաւոր փեսային. անհատ տես-
նեմք զօծեալն ըզՔրիստոս գոլով առ քեզ լուսովն հե-
թանոսաց:

Հրաշափառ տեսութիւն ի կաթուղիկէ եկեղեցւոյ:

ուեսանի. գործարան մահու մահուամբ առիթ գոլ կե-
նաց. եւ մահացուցիչ նախաստեղծին մահուամբ գոլ
նորհող յարութեան: Պարգեւ գերագոյն պարգեւի
այսօր հաւատացելոց. եւ մահացուն ի կենաց առնու
իւր զօրըս վերելեալս. եւ թռուցեալ վերագոյն բընա-
կիլ ի տեղւոջըն սըրբութեան: Եկայք ժողովուրդք
ընդ հոգեղինացըն սպասաւորեսցուք. երկըրպագեսցուք
աստուածային սուրբ նըշանիս. փառաւորեսցուք ըզհրա-
շագործ պարգեւաց տըւողըն:

ՀԳ. Արեգակն արդարութեան Քրիստոս ծագեալ յաշ-
խարհս հալածեաց ըզխաւարն անգիտութեան. եւ
յետ մահու եւ յարութեան համբարձաւ առ Հայր յոր-
մէ ծագեաց. որ երկըրպագի յերկնաւորաց եւ յերկրա-
ւորաց ընդ Հօր եւ սուրբ Հոգւոյն. || Վասն որոյ և
մեսք երկըրպագանեմք Հօր Հոգւով եւ ճըշմար-
տութեամբ: Որ փոխանակ ծոցածին բանին որ եւ
յերկինս. առաքեցաւ աւետիքըն Հօր ի բարձանց Հո-
գին ճըշմարտութեան. մըխիթարել զորս յԱդամայ տըրտ-
մեցելոց եւ հրագինել զընտրեալ դասս առաքելոցն.
Վասն: Այսօր տըրտմական եւ գիշերային լուծան եր-
կունք ծընընդեան նախամօրն. քանզի զծնեալըն մար-
մնով ի մահ եւ յապականութիւն. վերըստին ծնանի
Հոգին յորդիս լուսոյ Հօրն երկնաւորի. Վասն:

ՀՆ. Որ երկայնամիտդ ես Տէր. քաղցր և անոխա-
կալ հանգո զհոգի քո ծառայից. || զի մի դարձցի տնանկ
ամաչեցեալ յաւուրն ահեղ ատենին: Զյիշատակ հրա-
ժարելոցն ի հանգիս քեզ ընկալցիս. եւ զուխտըս մեր
ընկալ որպէս զԱբելին զնուէրն և զԱբրահամուն. զի:
Ի խորան քում սիրողաց հանգուսցես ըզծառայս քո.
եւ զհոգիս նոցա դասեսցես ընդ սուրբըս քո. զի:

Digitized by Google

ՄՍ․ Զանճառելի լուսոյ մայր․ եւ ընդունարան անըսկըզբնակից Որդւոյն․ ‖ օրհնութեամբ մեծացու-ցանեմք։ Զանհաս տնօրէնութեան մայր․ եւ զան-ճառ տաճար Աստուծոյ Բանին․ օրհնութեամբ։ —փառք Հօր։ Զբոլորից փրկութեան մայր․ որ զան-տանելին յէից ի յարգանդի եբարձ․ ընդ ամենեքեան օրհնութեամբ։

—Այժմ և միշտ։ Ուրախ լեր բերկրեալ հարսնա-ցեալ սուրբ եկեղեցի․ պայծառացո զմանկունս քո յօր-հնաբանութիւն․ ծագողին ընդ շող լուսոյ ի քեն մայր եկեղեցի։

Ալէլուիա Եկեղեցւոյ է յայնէն․ Դկ․ Տէր ով կացցէ։

---

ՑԱՌԱՒՕՏՈՒ
ՀԱՐՑ ԳՁ

Այսօր պայծառ եւ սիւն լուսոյ․ լցեալ աստուածա-յին շնորհիւ սուրբ եկեղեցի․ ‖ ի սմա ընդ քեզ օրհնեալ Աստուած հարցըն մերոց։ Հարսնարան արանց արդա-րոց․ եւ ի սմա շող աստուածեղէն ի Հօրէ լուսոյ ծա-գեալ․ ի սմա։ Տէրունի ողորմութեան․ Տէր տուր մե-զանշարժ զքո զխաղաղութիւնդ․ ի սմա։

Գ․ ԸզՏէր օրհնեցէք ‖ և առաւել բարձր արարէք ըզնա յաւիտեանս։ Ընդ անմարմնական բազմութեանն ըզՔրիստոս թագաւորն որ եկաւորէ այսօր ի սուրբ ե-կեղեցի․ ամենայն ազինք գովեցէք և առաւել։ Եկայք հաւատացեալք սուրբ Երրորդութեանն յեկեղեցիս օր-հնեցէք զԱստուած․ արարէք տօնս ուրախութեան մե-ծի յանկիւնըս սեղանոյ և առաւել։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԳՁ

Անսկզբնական Բանին Հօր բնակարան․ տաճար։ 244․

ՈՂՈՐՄԵԱ ԳՁ

Զորս ըստ պատկերի քում ստեղծեր․ նորոգեալ

քեզ տաճարացուցեր. զնորոգեալս ի մէնջ ըզտա-
ճաՃՃաՃ: սաՃ: մաս: մրս ընկալ քեզ ի բնակութիւն:
Որ շնորհես մեզ կենաց տուող. զկենդանագիր քո
ծառայական կերպի. բերելով ըզլուսորեց ըզվերբե-
րոՃՃսՃ: սաՃ: մաս: մզդ ի փառս սուրբ Երրորդու-
թեանդ: Կեցո զորդիս ծառայի քո. զոր ի Հռովմայ
զանհիցըն վերապատուեցեր. ուր եդին ըզվէմըն հաւա-
տոՃՃաՃ: սաՃ: մաս: մյ հիման սուրբ եկեղեցւոյ: Որ
ըզվերջինս զայս հրաշազարդեցեր. քեւ չափ բնակցու-
թեամբ ը հիմընափայլեցեր. զպանծալի և ըզփայլեալ
րզփառս տանս աՃՃաՃ: սաՃ: մաս: մյս վերջինս քան
զառաջինն:

### ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԳԶ

Որ զարդարեաց մեծափառ փառօք սուրբ զեկեղեցի. և լուսաճեմ բնակարան կարգեաց խորան դասուց հրեշտակաց. ‖ ըզընա սմ ամենայն արարածք օրհնեցէք: Որ ինքնագոյ հրաշիւքըն հիմնեցոյց ի վերայ հիման սուրբ առաքելոցն. և շնորհեաց քաւութիւն ի սմա. որդւոց մարդկան վերադասիլ ընդ վերին զըւարթունս. ըզընա: Որ ամենակարող զօրութեամբ իւրով անճառելի ծածկմամբ. աստուածապէս առատաձեռնեաց ազգի մարդկան. և պարգեւեաց շնորհս անապական ըզգեստըս պայծառ սմո ըզարդս. և բոլորեալ պըսակըս յաննմանոյց լուսոյն. ըզընա:

Առաւօտու Երգ Եկեղեցւոյ Տան քում վայելէ: Տէր թագաւորեաց:

### Քարոզ Ասասցուք

Զկնէ Սուրբ Աստուածէն Մող. փրկել: Քոր. Վասն լսելի: Քոհ. Օրհ: (Եւ եղանակն խաչի և Աւետարանն և ամենայն շարականք է գտանել, տանելով)

ՇԱՐԱԿԱՆ ԴԿ

Էջ Միածինն ի Հօրէ և լոյս փառաց ընդ նմա ։ 164 ։

ՍԱՂՄՈՍ ՃԺԷ . ԷՐԻ

ԿՑ . Այսօր է զոր ։ Փխ . Խոստովան եղերուք ։ 509 ։
Ալէլուիա . ալէլուիա ։

Ընթերցուած յԱռակաց ։ Թ . 1 ։

Իմաստութիւն շինեաց իւր տուն, և կանգնեաց ։ 780 ։

Ընթերցուած ի Զաքարիայ մարգարէէ ։ Գ . 7 ։

Այսպէս ասէ Տէր ամենակալ . եթէ ի ճանապարհս իմ գնասցես , և զհրամանս իմ պահեսցես , դու դատեսցես զտուն իմ . և եթէ պահեսցես զսրահս իմ , տաց քեզ որ շրջիցին ի մէջ դոցա որ կանդ աւադիկ ։ Բայց լուր, Յեսու քահանայ մեծ , դու և մերձաւորք քո որ նստին առաջի քո . զի արք հրաշադէտք կիւսահմայք են ։ Զի ահաւասիկ ես ածեմ զծառայ իմ զծագումն . զի զվէմն զոր ետու առաջի երեսաց Յեսուայ , ի վերայ վիմին եօթն աչք են . ահաւասիկ ես փորեցից խորխորատ, ասէ Տէր ամենակալ , և շօշափեցից զամենայն անօրէնութիւն երկրին այնորիկ յաւուր միում ։ Յաւուր յայնմիկ, ասէ Տէր ամենակալ , կոչեսջիք ամենեքեան զընկեր իւր ընդ որթով և ընդ թզենեաւ ։ Եւ դարձաւ հրեշտակն որ խօսէր ցիս , և զարթոյց զիս՝ զոր օրինակ յորժամ զարթնուցու այր ի քնոյ իւրմէ . և ասէ ցիս . զի՞նչ տեսանես դու ։ Եւ ասեմ . տեսանեմ ահա՝ աշտանակ ոսկի ձոյլ և զունդ ի վերայ նորա . և եօթն ճրագ ի վերայ նորա . և եօթն բերանք ճրագացն որ ի վերայ նորա ։ Եւ երկու ձիթենիք ի վերայ նորա , մի ընդ աջմէ գնդին լուցելոյ , և մի ընդ ահեկէ ։ Հարցի , և ասեմ ցհրեշտակն որ խօսէր ցիս . զի՞նչ են այդոքիկ Տէր ։ Պատասխանի ետ հրեշտակն որ խօսէր յիս՝ և ասէ ցիս . ո՞չ գիտես զինչ են այդոքիկ ։ Եւ ասեմ . ոչ Տէր ։ Պատասխանի ետ հրեշտակն և ասէ ցիս . այս բան Տեառն է առ Զօրաբաբէլ . ասէ . ոչ զօրութեամբ մեծաւ և ոչ ուժգնութեամբ այլ հոգւով իմով , ասէ Տէր ամենակալ ։ Ո՞վ ես դու լեառն մեծ կանգնեալ առաջի Զօրոբաբելի . և հանից զվէմն ժառանգութեան զհաւասարութիւն շնորհաց շնորհել նմա ։ Եւ եղև բան Տեառն առ իս՝ և ասէ . ձեռք Զօրոբաբելի հիմն արկին տանդ այդմիկ , և ձեռք նորա

կանգնեսցեն զդա. և ծանիցես՝ թէ Տէր ամենակալ ա-
ռաքեաց զիս առ քեզ։ Դ. 9։

Պօղոսի առաքելոյն յԵբրայեցւոց թղթոյն է
ընթերցուածս: Թ. 1:

Ունել ունէր և առաջինն իրաւունս պաշտաման յայնժամ աշխարհական սրբութիւնն։ Զի խորանն առաջին հանդերձեցաւ այսպէս, յորում աշտանակն և սեղանն և հացն նուիրաց, որ սրբութիւնն կոչէր. և յետ երկրորդ վարագուրին՝ խորանն որ կոչէր սրբութիւն սրբութեանց, յորում կայր բուրվառն ոսկի, և արկղն կտակարանաց պատեալ ներքոյ և արտաքոյ ոսկւով, յորում սափորն ոսկի լի մանանայիւ, և գաւազանն Ահարոնի որ ծաղկեցաւ, և տախտակք կտակարանացն. և ի վերայ նորա քերովբէքն փառաց՝ որ հովանի ունէին ի վերայ քաւութեանն. վասն որոյ ոչ է այժմ ասել մի ըստ միոջէ։ Եւ այն ամենայն իբրև այնպէս հանդերձեալ կայր, յառաջին խորանն յամենայն ժամ մտանէին քահանայքն զպաշտամունս կատարել. բայց յերկրորդն՝ մի անգամ ի տարւոջն քահանայապետն. և զայն ոչ առանց արեան, զոր մատուցանէր վասն իւր և վասն ժողովրդեանն անգիտութեան։ Զայս ցուցեալ Հոգւոյն սրբոյ՝ մինչ չև յայտնեալ էր ճանապարհի սրբութեանցն. քանզի դեռ առաջին խորանն ունէր զհաստատութիւն, որ է առակ ժամանակին որ առաջի կայր. յորում պատարագքն և զոհք մատչէին, որք ոչ կարէին ըստ միտս կատարել զպաշտօնեայսն, բայց միայն կերակրովք և ըմպելեօք և պէսպէս մկրտութեամբք, մարմնոյ արդարութիւնքն՝ որ մինչև ի ժամանակս ուղղութեանն ի վերայ կային։ 10։

Ձայնի– Ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա.

Որպէս սիրելի են յարկք քո Տէր զօրութեանց, ցանկայ և փափագէ անձն իմ ի գաւիթս քո։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Յովհաննու։ Ժ. 22։

Առ Տերամբ մերով Յիսուսիւ Քրիստոսիւ.

Եղեն յայնժամ Նաւակատիքն յԵրուսաղէմ, և ձմեռն էր. և շրջէր Յիսուս ի տաճարին՝ ի սրահին Սողոմոնի։ Շուրջ եղեն զնովաւ Հրեայքն և ասեն. մինչև յերբ թարես զոգիս մեր, եթէ դու ես Քրիստոսն՝ ասա մեզ հա-



Digitized by Google

մարձակ ։ Պատասխանի ետ Նոցա Յիսուս և ասէ . ասա-
ցի ձեզ՝ և ոչ հաւատայք ինձ . զգործսն զոր ես գործեմ
յանուն Հօր իմոյ՝ նոքին իսկ վկայեն վասն իմ ։ Այլ
դուք ոչ հաւատայք , զի չէք յոչխարաց անտի իմոց ։ Ոչ-
խարք իմ ձայնի իմում լսեն , և ես ճանաչեմ զնոսա , և
զկնի իմ գան . և ես տամ Նոցա զկեանսն յաւիտենականս ,
և մի կորիցեն ի յաւիտեան , և մի ոք յափշտակեսցէ
զնոսա ի ձեռաց իմոց ։ Հայրն իմ որ ետ ինձ զնոսա՝ մեծ
է քան զամենայն , և ոչ ոք կարէ յափշտակել ի ձեռաց
Հօր իմոյ . ես և Հայր իմ մի եմք ։ 30 ։

(Եւ փոխանորդքն շարականն ։ Քար . Սուրբ խաչ ։ Աչ .
Պահպանեա ։) Զկնի Նորաստեղծեալ ։ Քար . Խնդրեսցուք
կեցո ։ Աղօթ . Քում ամենազօր ։

---

ՅԵՐԵԿՈՅԻՆ

Ի տան ժամու ժողովքն է դրան Եկեղեցւոյն և ասեն

Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս , ամէն . Հայր մեր ։

ՍԱՂՄՈՍ ԺԺԷ . ԷՐԷ

Կց . Այսօր է զոր ։ Փխ . Խոստովան եղերուք ։ 509 ։
Ալէլուիա . ալէլուիա ։

Գիրք և Առաք . առաքելականն է . (և Եկանէն խաչն և Առաք ։

ՇԱՐԱԿԱՆ ԴԿ

Էջ Միածինն ի Հօրէ և լոյս փառաց ընդ Նմա ։ 164 ։

ԶԿնի Օրթի

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի ։ ԻԴ . 27 ։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս ասէ .

Զի որպէս փայլակն՝ որ ելանէ յարևելից ։ 326 ։

(Եւ փոխանորդքն շարականն ։ Զկնի Քարոզ . Սուրբ խա-
չիւս ։ Աղօթ . Պահպանեա ։) Քար . Եւ ևս խաղ . Քահ . Օր-
հնութիւն ։ Եւ ասէն խոնարհեցո և Արբեցո ։

Մեսեդի Եկեղեցւոյ ։ Աստ օրհնեցէք ։ Ո կայք ի տան ։
Քարոզ Ասասցուք ։

ՀԱՄԲԱՐՁԻ ԳՁ

Որ զարդարեաց մեծապայծառ փառօք սուրբ ։ 847 ։

Քար . Սուրբ եկեղ ։ Կեցո ։ Աչ . Առ դրան սուրբ եկեղ ։

---

Digitized by Google

# Բ. ԵՐԿՈՒՇԱԲԱԹԻ. ԱՁ
## Ս. Անմեղ մանկանցն Բեթղեհեմի եւ Ակակիոսի վկային

Ի ԳԻՇԵՐԻ *ՕՐՀ. ԱՁ. Ժողովեալքս ի յիշատակ*: 50:

---

### ՑԱՌԱՒՕՏՈՒ

*ՀԱՐՑ ԴՁ*

Այսօր անմեղ սուրբ մանկունքն ի տղայական հա-
սակի. նախավախճան չարչարանօք վկայք եղեն քո
արդեղութեանդ. || Տէր Աստուած հարցըն մերոց:
իւռաբոյսք ի մօրէ նորաբողբոջք ի հասակի. նահա-
տակեալք ի պատերազմի և ընկալան ըզչարչարանս.
ասըն քո համբերելով Տէր: Արդ բարեխօս առ քեզ
ունիմք զերանելի սուրբ նահատակսն. որք վասըն քո
չարչարեցան ի Բեթղեհէմ նահատակեալք. վասըն քո
համբերելով Տէր:

Գ. ԸզՏէր օրհնեցէք || Ժողովուրդք Աստուծոյ յիշա-
տակի սոցա բարձր արարէք ըզնա յաւիտեան: Մատա-
ատունկ նահատակք ի տղայական երամոց. սրախող-
ող եղեալ ի գիրկըս մարցըն կատարեցան. ժողո:
անաւոր գառինք ի տանէն Եփրաթայ. որք մատու-
ցան սուրբ պատարագ ի Հերովդէ որպէս զԱբէլ ի
այենէ. ժողովուրդք:

*ՄՆԾԱՑՈՒՍՑԷ ԴՁ*

Ուրախացիր Աստուածածին որ կուսութեանց: 262:

*ՈՂՈՐՄԵԱ ԳՁ*

Այսօր տըղայք սըննդեայք. կոտորեալք ի Հերով-
դայ. եղեն ճըշմարիտ վըկայք ծընընդեան քո Տէր.
արեխօսութեամբ սոցա Փրկիչ ողորմեա: Այսօր
ատարիւր բան մարգարէին որ ասէր. Ձայն գուժեաց
Հռամայ լալումն ողբումն և աշխարումն. բարեխօսու-

թեամբ սոցա փրկիչ ողորմեա։ Ծաղկեցաւ Բեթղե-
հէմ հեղմամբ արեան սուրբ տղայոցն. բերկրեցաւ եւ
Հռաքէլ անուշահոտ պատարագօքն. բարեխօսութեամբ
սոցա փրկիչ ողորմեա։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԳԶ

Այսօր ընդ դասս հոգեղինաց երկնաւոր զօրացն
վերառեալ տօնեմք զյիշատակս սրբոց մանկանցն
որք կոտորեցան ի Բեթղեհէմ եւ դասեցան ի դասս վե-
րին զուարթնոցն։ Սրտմտեալ Հերովդէս ցասմամբ
մեծաւ եւ սպառնալեօք. քանզի ձայն լուեալ զարքայէ
ի Բեթղեհէմ հրէաստանի. զարհուրեալ դողացաւ ի նո-
րածին թագաւորէն։ Եւ բարկութեամբ զայրացեալ ա-
ռաքէր ի Բեթղեհէմ. եւ զանօրէն ըզհրամանըն պա-
տուիրէր զօրաց իւրոց. կոտորեցէք ասէ անողորմ ըզ-
նորահաս մանկունսն։ Եւ փութացեալ զինուորացն յար-
ձակեցան ի Բեթղեհէմ. եւ շուրջ պատեալ անողորմ
կոտորեցին յերկեմենից եւ ի խոնարհ. խառնելով ըզկա-
թըն ստեանցն ընդ արեան մանկանցն։ Խայտային
սուրբ մանկունքն որպէս զգառինս ի մէջ հօտից. եւ
զվարդագոյն արիւնս իւրեանց փոխադրեցին փրկչին
արեանն. վերձեմեալ ընդ զուարթունս պսակեցան ի
Քրիստոսէ։ Իսկ Որդին միածին անժամանակն Աստու-
ած. ըզվրէժս չարաչար մահու ածեալ ի վերայ Հերով-
դէի. եւ զանձինս սուրբ մանկանցն ենթադրեաց ի
գոգն Աբրահամու։

ՄԱՆԿՈՒՆՔ ՆԻ ՀԱՄԲԱՐՁԻ ԴԿ. ՍՏ.

Երանելի սուրբ մանկունքն որպէս քաջ նահա-
տակք ետուն զանձինս իւրեանց ի մահ. փոխա-
նակ Որդւոյն Աստուծոյ։ Եւ դիակունք սուրբ
մանկանցն որպէս ըզծաղիկ նռնենեաց հարեալ ի

...արկանէ։ Եւ անկեալ ի սուրբ Բեթղեհէմ։ Եւ
...ոգի ... ք սուրբ մանկանցն որպէս զերամս աղաւնեաց
թռուցեալ ի յերկինս. Եւ դասեալք ընդ զուար-
թունս երկնից։

---

# Բ. ԵՐԵՔՇԱԲԱԹԻ. ԱԿ

## Ս. կուսանացն Ռուփսեայ եւ Մանեայ

Զօրհնութիւն եւ շարականն ...... : 823 :

...ՐԱՆ ԿՈՒՆՔ ԵՒ ՀԱՄԲ. ԴԿ. Ցիշատակ Քրիստոսի: 829:

---

# Բ. ՉՈՐԵՔՇԱԲԱԹԻ. ԲՋ

## Պահոց

Ի ԳԻՇԵՐԻ. ՕՐՀ. Պահ. ԲՋ. Դարձո զցասումն: 115:
ՑԱՌԱՒՕՏՈՒ ՀԱՐՑ ԱՋ. Որ համագոյից ես: 193:

---

# Բ. ՀԻՆԳՇԱԲԱԹԻ. ԲԿ

## Ս. Սարգսի եւ Բագոսի

Ի ԳԻՇԵՐԻ ՕՐՀ. Մարտր. ԲԿ. Շնորհեա մեզ: 62:
ՑԱՌԱՒՕՏՈՒ ՀԱՐՑ ԱՋ. Զքեզ արդար և: 80:

---

# Բ. ՈՒՐԲԱԹ. ԳՋ

## Պահոց

Ի ԳԻՇԵՐԻ ՕՐՀ. Պահ. ԳՋ. Զերծո զիս յորո: 118:
ՑԱՌԱՒՕՏՈՒ ՀԱՐՑ Հանգ. ԲՋ. Որ թագաւորդ: 134:

---

# Բ. ՇԱԲԱԹ. ԳԿ

## Ս. Մովկիմայ քահանայի եւ կոդրա-
## տիոսի զինաւորին

Ի ԳԻՇԵՐԻ ՕՐՀ. Մարտր. ԳԿ. Այսօր հրեշտա: 69:
ՑԱՌԱՒՕՏՈՒ ՀԱՐՑ ԱԿ. Սուրբ Աստուած արարիչ: 82:
ՑԵՐԵԿՈՑԻ ՄԵՍԵԴԻ Սիրեցի: Զի խոնարհեցոյց:
ՀԱՄԲ. ԱՋ. Սուրբ ես Տէր. Լ. Երկնաքաղաք: 110:

---

Digitized by Google

# Գ· ԿԻՐԱԿԷ· ԴԶ
## ԶԿՆԻ ՊԵՆՏԵԿՈՍՏԷԻ

## Ի ԳԻՇԵՐԻ

### ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԴԶ

Օրհնեցուք զՏէր և զյաղթօղ զօրութիւն: 21:
Ալէլուիա Ցարութեան ԴԶ. Գովեա: Ողորմութեամբ:

---

### ՑԱՐԱՒՕՏՈՒ.

### ՀԱՐՑ ԱԶ

Որ եկիր ի փրկութիւն տիեզերաց թագաւոր յա-
ւիտենից Քրիստոս. || զքեզ փառաւորեմք Աստուա-
Հարցըն մերոց: Ցանձն առեր ըզչարչարանըս կամա-
ւորապէս և ըզմահ ճաշակեցեր վասըն մեր. զքեզ:
Կընքեցար վիմով ի գերեզմանի. և լուծեր ըզկապ
մահու յանցանաց. զքեզ:

Գ. Ըզտէր օրհնեցէք || բարձր արարէք ըզնա յաւի-
տեանս: Զյարուցեալըն ի մեռելոց Քրիստոս Աստուած
որ ըզմահ խափանեաց յարութեամբն իւրով բարձր:
Զսքանչելի յարութիւնըն Քրիստոսի Աստուծոյ. ամե-
նայն ժողովուրդք. բարեբանելով բարձր:

### ՄՆԾԱՑՈՒՍՑԷ ԱԶ

Որ ընտրեցար ի սկզբանէ անապական կոյս: 188:

### ՈՂՈՐՄԵԱ ԱԶ

Բանդ որ ի Հօրէ իջեալ մարմնացար ի կուսէն. խա-
չեցար կամաւ Հօր վասըն մեր ըզմեղըս սպաներ. || ողորմեա
Աստուած ողորմեա մեզ: Որ յարարածոց ես անքնըն-
դակելի. ի խաչափայտին բեւեռելով ըզմահ կախեցեր
ողորմեա: Որ ի Նախնումըն զանկեալըն ի ծառայութիւն
մահու. պատուականն մարմնով և արեամբըդ քո ազա-
տեցեր. ողորմեա:

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԱՁ

Ընդ լուսանալ միաշաբաթին կանխեցին կանայքն ի գերեզմանն. և խընկել զանապական մարմինն։ Եւ գտին ըզվէմըն բարձեալ ի դրանց գերեզմանին. Եւ լըւեալ բարբառ ի հրեշտակէն. եթէ յարեաւ Քրիստոս և խափանեաց ըզմահ։ Եւ հանդիպեալ քո Տէր առաքելոցն. Եւ տըւեալ ողջոյն կենդանարար. առաքեցեր զնոսա ի փըրկութիւն ազգաց։

ՅԵՐԵԿՈՅԻ ՀԱՄԲԱՐՁԻ ԴՁ. Ա. փառաբանակից։ 44։

# Գ. ԵՐԿՈՒՇԱԲԱԹԻ. ԴԿ

## Ս. Եպիփանու կիպրացւոյն

Ջամերգոյն ինչ զԹարգմանչացն ասա։ 870.

Իսկ յերեկոյին ՀԱՄԲԱՐՁԻ ԳՁ. Նմանեալ։ 876։

# Գ. ԵՐԵՔՇԱԲԱԹԻ. ԱՁ

## Ս. Կոստանդիանոսի Թագաւորին եւ մօր նորա Հեղինեայ

Ջամերգոյն ինչ զԹէոդորոսին ասա։

Ի ԳԻՇԵՐԻ

ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԱԿ

Որ զերկնաւոր թագաւորութեանըդ քո զօրինակ ցուցեր ի յերկրի. հաստատելով զաթոռ թագաւորութեան Թէոդոսի թագաւորի յարդարութիւն և յիրաւունս. || բարեպաշտութեամբ սորա Քրիստոս խընայեա ի մեզ։ Որ զօրութեամբ նըշանի խաչի քո Տէր պատերազմելով. խորտակեաց զընդդիմամարտ բռնութիւն հեթանոսաց եւ հաստատեաց խաղաղութեամբ սուրբ զեկեղեցի. բարեպաշտութեամբ։ Որ եսուր զիրաւունս արդարութեան քո արքայի. զատելով ըզժողովուրդըն քո արդարութեամբ ըստ հրամանի սըրբոց քոց պատուիրանաց. բարեպաշտութեամբ։

Digitized by Google

÷ Որ զարդարեալ զեղապանծ վայելչութեամբ սուրբ զեկեղեցի. պըսակեցեր առաքելովք եւ մարգարէիւք եւ հաստատեալ ամրացուցեր սուրբ Թագաւորօք. Ի բարեպաշտութեամբ սոցա Քրիստոս խընայեա ի մեզ։ Որք զինու զօրութեամբ հոգւոյն վառեալք ի պատերազմի. վանեցին ըզմոլութիւն հերձուածողաց եւ ի հաւատոյս ճըշմարիտ հաստատեցին ըզտիեզերս. բարեպաշտութեամբ։

ՑՈՎ. Թագաւորըն բոլորից պարածածկեալ յարգանդի կուսին. զոր ծառայք հաւատարիմ տեսեալ հռչակեցին սըրբով եւ բերանով մօք քո օրհնաբանէին‖ առ Քրիստոս բարեխօսեա վասն անձանց մերոց։ Ժառանգաւոր հին օրինացն արդարութեան ընդ մարգարէիցն. եւ նախաշաւիղ հետեւողաց անձնէիւ ճանապարհին նոր օրինացս ընդ առաքելոցն. առ։ Ի յանապատի հրեշտակական վարուք բնակեցար ընդ Եղիայի. կերակրելով մարախ եւ մեղր վայրենի հին եւ նոր պատուիրանաց օրինակաւ. առ։

ԱՌ. Ի մաքրագործ հոգւոյն անօթ ընտրեալ եւ ձիւնափայլ. Թագաւորք երկրի իշխանք աշխարհի. ապականս զանձուց բաշխող Յակոբ Աղփեան Յուդա Յակոբեան. բարեխօս լերուք առ Տէր վասն անձանց մերոց։ Երեքսրբեան մի տէրութեան խորհուրդ կոմաց եւ հազարապետք. փողոց հընչմունք բարբառաւետեաց ընդ ամենայն երկիր սուրբըդ Շմաւոն եւ Մատաթիա. բարեխօս լերուք առ Տէր վասն անձանց մերոց։ Բանիւն կենաց կանոնիս քարոզ եւ աւետարանիչ. երգ փըրկութեան հընչումն ահաւոր. ազգի մարդկան պարծանք սուրբըդ Մատթէոս. բարեխօս լեր առ Քրիստոս վասն անձանց մերոց։

ՍԱՐ. Թագաւորին երկնաւորի սուրբ զօրապետ եւ մենամարտիկ. սիրով անմահին խաչեալ յաշխարհի. Երամգահան սուրբըդ Սարգիս. խաչիւ պըսակեալ. || բարեխօս լեր առ Քրիստոս վասն անձանց մերոց։ Արեգականն արդարութեան մեծ կարապետ պայծառ արուսեակ. ցոլացեալ յարեւմըտից ի յելս արեւու. Երամգահան սուրբըդ Սարգիս. անշէջ ճառագայթ. բարեխօս։ Աւետաւոր հայոց մեծաց դիմեալ ի մէջ երկրի ի հիւսիսոյ. հողմըն հարաւոյ ի դաշտ ծաղկածին. Երամգահան սուրբըդ Սարգիս. տունկ անմահութեան. բարեխօս։

ՄՐՏ. Ի տաճարի հանգըստեան սըրբոց վըկայից. զաղաչանըս մեր մի անտես առներ որ կարդամք առ քեզ Տէր. || սոցա բարեխօսութեամբ կեցո ըզմեզ։ Որք վասն անուանըդ քո հեղին ըզպատուական սուրբ զարիւնս իւրեանց. արիաբար մարտեան ընդդէմ թըշնամւոյն եւ զօրացան ի պատերազմի. սոցա։ Պարծեցին սուրբըք քո Տէր ի հանգիստս իւրեանց. որք տանջանաց անօրինացըն համբերեցին եւ անապական պըսականացըն արժանի եղեն. սոցա։

ՀԳ. Որ յերկնային զօրս անմարմնոցըն նախ հեղեր առատապէս Հոգիդ ճըշմարիտ. զաստուածային և զգերագոյն քո իմաստութիւնդ լինել փառաբանիչ սուրբ Երրորդութեանդ. || ընդ նոսին փառաւորեմք զերրեակ միութիւնդ։ Որ զկերպարանն աստուածային ստեղծեալ Երրորդութեանդ խորհըրդակցութեամբ. զարդարեցեր փըշմամբ շնորհաց քոց կենդանարար. եւ ընդ ծնեալսն առ ի նմանէ խօսեցար օրինօք եւ մարգարէիւք. ընդ նոսին։ Որ յերկրորդին լինելութեանս յետ յարութեան քում էակցին. մըտեալ ի վերնատունն

դրօշքըն փառակելովք շնորհելով ըստ ձայնին փրկչական ըղձեց մետամանից առաքելոցն ասաց առէք հոգի սուրբ. ընդ նոսին փառաւորեմք զերրեակ միութիւնդ։

ՀՆ. Յորժամ յերկնից գոչէ փողն ազդեցութեան առնելով տիեզերաց ի դատաստանն ահաւոր. յայնժամ աւուր յահեղին ‖ յիշեա Տէր եւ ըղձեր ըն-ննջեցեալսն եւ հանգո ընդ սուրբըս քո։ Յորժամ ճառագայթք աստուածութեան նորա փայլեն ի յարեւելից. եւ դըպրութիւնք հրաշիծըն բանին յայնժամ աւուր յահեղ. յիշեա։ Զարհուրեալ դողան արարածք ի ձայնէ սոսկալագոչ փողոյն. յորժամ հարկանէ հրեշ-տակապետն եւ կոչէ ի դատաստան զազգս որդւոց մարդկան. յայնժամ աւուր յահեղին յիշեա։

ՄԾ. Որ նախիմաց իմաստութեամբ տնօրինեցեր զխորհուրդ սուրբ եկեղեցւոյ. խորագոյն արկեալ հի-մունս հաստատութեան ըզգաստ արդարոց. ‖ աղաչանօք սոցա խընայեա ի մեզ։ Որ զօրհնութիւն նախաստեղ-ծիցն աստուածազգեաց արուաց եւ իգաց. պայծառացեալ վայելչապէս ծաղկեցուցեր այսօր ի Յովակիմ եւ ի յԱննայ. աղաչանօք։ Որ ըզխոստմամբն Աբրահամու նա-հապետին մեր ըստ հոգւոյ. քահանայական եւ թա-գաւորական զաւազանացն միացեալ ցուցեր այսօր ի յԱննայէ. աղաչանօք։

ԽՉ. Ի վերայ վիմի հաւատոյ հիման առաքելոց եւ մարգարէից. շինեցեր ըզքո սուրբ զեկեղեցի եւ ի սմա միաձայնեալ երգեն մարդիկ ընդ հրեշտակս. փա-ռաւորելով սուրբ զԵրրորդութիւնդ։ Տեղի ապաւէնի եւ ժողովարան բանաւոր հօտի. բնակարան հրեշ-տակաց նաւահանգիստ արդարոց եւ մեղաւորաց քա-ւարան. զարդարեալ առաքելովք եւ մարգարէիւք։

Digitized by Google

—Փառք Հօր։ Բանն Աստուած և ծածկեալ խորհուրդըն յաւիտենից. իջեալ ի յերկնից մարմնացեալ ի կուսէն խաչեալ յերկրի և թաղեալ ի նոր ի գերեզմանի. եւ յարուցեալ յերրորդ աւուր զի զմարգարէիցն ըզտառսըն կատարեսցէ։

—Այժմ և միշտ։ Որ շնորհեցեր յաշխարհի թագաւորել մեծին Թէոդոսի. եւ կատարեալ ըղձեանըս հաւատով ուղղափառութեան վերափոխեցեր այսօր յերկնից թագաւորութիւնդ. բարեպաշտութեամբ սորա Քրիստոս խնայեա ի մեզ։

---

ՅԱՐԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԱՁ

Օրհնեմք ըզքեզ Քրիստոս թագաւոր. որ յաղթող խաչիւ քով. պսակես ըզսուրբս քո. անքննելի փառօք քո. ‖ Աստուած հարցըն մերոց։ Այսօր ցընծան զուարթունք երկնից ընդ ճըգնութիւն թագաւորին. քանզի երգէ բարեպաշտութեամբ Թէոդոս մեծ թագաւորն ընդ վեցթեւեան զօրս երկնից Աստուծոյ։ Եւ նորածնեալ եկեղեցիք հեթանոսաց. ընդ սըրբոյն Թէոդոսի բարեպաշտ թագաւորի երգեսցուք քեզ երգ նոր Աստուած։

Գ. Ըզտէր օրհնեցէք ‖ Ընդ սըրբոյն բարձր արարէք զԱստուած Բանըն Հօր յաւիտեան։ Որ ի յերկրի է պըսակեալ ի հրեշտակաց. եւ ի յերկինս բարձրացեալ բարեպաշտութեամբ իւրով. ընդ։ Որ հաւատով պարտեաց ըզթըշնամին. եւ աղօթիւք հիմնեցոյց սուրբ զեկեղեցի. ընդ։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԱՁ

Երանելին աստուածասէր սուրբ դըշխոյն. եկեալ[*] ի քաղաքն Երուսաղէմ. խնդրէր ըզփըրկական ծագու-

[*] Տես ի Ձեկուցումն, էջ ի։

մըն մեծի փայլման. եւ քարոզէր նոցա զմորե-
նին վառեալ որ ոչ այրէր. Մեծացուցանելով ըզ-
ծընեալըն ի կուսէն: Եւ խոշտանգեալ ըզգօր
Հըրէիցն. խոստովանէր Յուդայ. ընկեալ ի անձին
գողգոթա հաւատով. եւ քարոզէր նոցա զգիւտն
ընդ որ եմուտ Բանն Աստուած. Մեծացուցէ: Եւ համ-
բարձեալ ըզձայնն Յուդայի. խընդրելով ի Տեառնէ
ըզտենչալին ամենեցուն սուրբ ըզ խաչն. եւ հաւատով
գոչէր. Եկայք երկրպագեսցուք աստուածային սուրբ
նըշանիս. Մեծացուցէ:

ՈՂՈՐՄԵԱ ԲՁ

Թինս եմ Աստուածած փըրկիչ մեր. լուր մեզ որ
կարդամք առ քեզ. բարեխօսութեամբ սուրբ թագա-
ւորին: Որ բարեպաշտութեամբ հիմնեցոյց զեկեղեցի
սուրբ. եւ կարգաւորեաց ուղղափառութեամբ ըզ-
ժողովուրդս: Արդ անկեալ աղաչեմք ըզքեզ մարդա-
սէր Տէր. յիշատակի սորա պարգեւեա մեզ զերկնա-
յին քո զխաղաղութիւնդ:

ՏԷՐ ԵՐԿՆԻՑ ԲՁ

Ով երանելի եւ բարեպաշտ Թէոդոս մեծ թագա-
ւոր. Բարեխօս լեր վասըն մեր առ թագաւորն եր-
կնաւոր. թողուլ մեզ ըզմեղըս մեր: Որ երկրպագող
ես Քրիստոսի եւ հիմնադիր սուրբ հաւատոյ. բարեխօս:
Որ թագաւորաց ես ի յերկրի պարծանք եւ ի յերկ-
նըս պըսակեալ. բարեխօս:

ՄԱՆԿՈՒՆՔ ՆԻ ՀԱՄԲԱՐՁԻ ԲԿ

Ով երանելիդ ամենեցուն տիեզերական իշխանու-
թեամբ ընկալար ի Քրիստոսէ ըզթագ պարծանաց.
Ով Թէոդոս մեծ թագաւոր. վասըն մեր բարեխօսեա
առ թագաւորն երկնաւոր: Որ քոյին սուրբ աղօթիւքդ

փառնեցեր ըզթըշնամին կոխելով ըզզաւատանայ. ընդ երկնայինսըն դասեցար. ով: Ուսուր ես մեք հաւատացեալքս տօնեմք զքո յիշատակս. օրհնութեան առաքելով ըզքեզ պըսակողին. ով:

---

## Գ. ՉՈՐԵՔՇԱԲԱԹԻ. ԱԿ

### Պահոց

Ի ԳԻՇԵՐԻ *ՕՐՀ. Պահոց ԱԿ. Ծով կենցաղոյս* : 113 :
ՅԱՌԱՒՕՏՈՒ *ՀԱՐՑ ԱՁ. Որ յամենայնի ես* : 194 :

---

## Գ. ՀԻՆԳՇԱԲԱԹԻ. ԲՁ

### Ս. Թէոդիտոսի գաղատացւոյն եւ Թալիլեայ բժշկին եւ եօթն կուսանացն Անկիւրիայ

Ի ԳԻՇԵՐԻ *ՕՐՀ. Մարտ. ԲՁ. Օրհնեն զքեզ* : 58 :
ՅԱՌԱՒՕՏՈՒ *ՀԱՐՑ ԲՁ. Անոխակալ և բարե* : 85 :

---

## Գ. ՈՒՐԲԱԹ. ԲԿ

### Պահոց

Ի ԳԻՇԵՐԻ *ՕՐՀ. Պահ. ԲԿ. Ցամենայն ժամ*: 116 :
ՅԱՌԱՒՕՏՈՒ *ՀԱՐՑ Հանգ. ԲԿ. Արարիչ և մար*: 136:

---

## Գ. ՇԱԲԱԹ. ԳՁ

### Գիւտ Նշխարաց Ս. Գրիգորի մերոյ լուսաւորչի

*Ի Նախընթաց երեկոյին Նախատօնակ ասա. Ով երջանիկ տէր սուրբ Գրիգոր: Իւր ասերգն*: 837 :

### Ի ԳԻՇԵՐԻ

#### ՀԻՏԵՒԱԿ ՇԱՐԱԿԱՆ ԳԿ

Լերինք ամենայն այսօր ցընծացէք ընդ մեծապայծառ փառսըն Սեպուհհոյ գերազանց լերինն. քանզի ի նմա բնակեցաւ սուրբըն Գրիգորիոս սբն լուսոյ Հայաստանեայց սուրբ եկեղեցւոյ. որով ցընծայ ի փառս վերնոյն Սիովնի: Որ առաւել խորին խորհըրդով խընդայ քան զարարատեանըն բարձըր Մասիս. քանզի ի

Digitized by Google

Նման հանգեաւ սուրբըն Գրիգորիոս տապանըն ապրեցուցիչ ի հոսանաց մեղաց Հայաստան ազանց. որով փըրկիմըք միշտ ի ջուրց հոսանացն։ Գեղապանծ լուսով բերկրեալ զուարճանայ լեառըն Սեպուհոյ հանգոյն Սինայի. յորում եկաց կամարն ամպեղէն սուրբըն Գրիգորիոս գերահրաշ լուսով զարդարեալ նըման Մովսէսի. որով փայլեն երեսք շնորհօք սուրբ Հոգւոյն։ Զօրօք հրեղինաց պարփակեալ պահի լեառըն հանգըստեան սըրբոյն Գրիգորի տեսլեամբ կարմեղայ. զորըս պարըսպեն կառքըն կենդանի մաքրափայլ ազօթք սուրբ Լուսաւորին հօրըն հոգեւոր. զոր առ Տէր ունիմըք միշտ բարեխօսն։ Համանըմանեալ ամովսածնին Եսայեայ կայծակնամաքուր սուրբ մարգարէին տէր Գրիգորիոս. վեցթեւեան սրովբէից կիցիչ կենդանեաց եղեւ տեսանող հոգւով կենդանին. զանդընդախոր ըղձօրն երկնից կամօր յօրինեալց։ Շնորհաբաշխ աջոյն Յիսուսի պատուեցաւ լեառըն Սեպուհոյ ի տիպ Սանիրայ եւ Ահերմոնի յորմէ բըղխեաց աղբիւրըն լուսոյ ջուրըս բարեհամս եվըտանկս յորդախաղաց հոսանօք. որով ցընծայ երկիր ի բերս արմըտեացն։ Ցընծեամբ սուրբ կուսին յայրըն Բեթղեհէմ յորդորեցան դըստերքն Եւայի լինել կատարեամբ ի մայր Քրիստոսի. յորում ծագեաց խորհուրդըն պայծառ յերկնանըման լերինն ի յայրըն Մանեայ մաքրական վարուք. որով սըրբիմըք միշտ ի յաղտոյ մեղացն։ Խորհուրդ խաչելոյն գերահրաշ տեղւոյն Գողգոթայ ծածկապէս ի սմին լերին տեսանի. զէնն արքայական սպանմանըն գործի կենաց արքային ի կենաց գործիս նըւիրեալ. որով փըրկեցէ ըզմեզ յաւիտենից մահուանէն։ Զխորհուրդ Սեպուհոյ սեպհական փառաց Հոգւովըն սըրբով մարգարէին ծանուցեալ. զոր եւ հար-

ցանէր զխորանն Աստուծոյ եւ ըզլեառըն Տեառն թէ ով բնակեսցէ. զոր եւ տեսաք առ սուրբըն Գրիգոր կատարեալ: Անբիծըն վարուք արդարըն հոգւով բանիւ ճըշմարիտ եւ սուրբըն սըրտիւ տէր Գրիգորիոս. որում ցանկացան զօրքըն սրովբէից բերանք հրեղէնք յերկնից ի յերկիր խոնարհեալ ի տես մարմնով ճըգնողին. որ եւ պատիւ տեղւոյն անուամբըն կոչի: Հովուին հըսկողի ճըշմարիտ և քաջ հովուին պատկերի հովիւքն եղեն հետեւողք. զոր ամփոփեցին զմարմինըն մաքուր մերձ ի յայրըն Մանեայ մեզ դեղ ախտից մաքրութեան. որով սըրբիմք հոգւով ի թունից վիշապին:

Քարոզ. Եւ ևս խաղ. Քահ. Օրհնութիւն. Եւ այլն

ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԴԿ

Արմատ ճշմարիտ աստուածային: Իւր տեղւոջն: 838:

---

## Դ · ԿԻՒՐԱԿԷ · ԳԿ

### ՁԿՆԻ ՊԵՆՏԵԿՈՍՏԷԻ

### ՅԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԱՁ

Պայծառացիր եկեղեցի հեթանոս: Իւր տեղւոջն: 545:

ՑԵՐԵԿՈՑԻ ՀԱՄԲ. ԳԿ. Ա. Յարեաւ Տէրն: 42:

---

## Դ · ԵՐԿՈՒՇԱԲԱԹԻ · ԴՁ

### Ս · Ներսիսի հայրապետին եւ Խադայ եպիսկոպոսին

### Ի ԳԻՇԵՐԻ

ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԲԿ

Որ ըզլոյս անճառ շնորհաց աստուածային քո գիտութեանդ. ծագեցեր յաշխարհս Հայաստանեայց. զըթած Հայր երկնաւոր զըթա ի մեզ մեղուցեալքս: Որ

ընտրեցեր յորովայնէ զմաքրեալն Հոգւով սուրբն Ներսէս. ժառանգել զվիճակ հայրենի հովուել արդարութեամբ եւ իրաւամբք։ Որ օրինօք ճշմարտութեանըն զարդարեաց զեկեղեցի. կարգաւորեալ բարեպաշտութեամբ. սորին աղաչանօք խնայեա ի մեզ Քրիստոս։

† Որ յերջանիկ ընտրեալ սրբոց հայրապետացըն ժողովոյն. զերագոյն փառօք պատուեցաւ սուրբն Ներսէս դաւանեալ Աստուած զՀոգին ճշմարիտ ընդ Հօր եւ Որդւոյ։ Որ ըզծածկեալ խորհուրդ ապագայից ժամանակաց. յայտնեցեր սրբոյն Ներսեսի սորին աղաչանօք խնայեա ի մեզ Քրիստոս։

ՀՐՇ. Անդադար յերկինս օրհնաբանողք Հօրն երկնաւորի զօրք լուսեղինաց. || բարեխօս լերուք ընդ մեղաւորացս։ Քաղցրաձայն երգով գոհաբանողք Որդւոյն միածնի դասք հրեշտակաց. բարեխօս։ Անլռելի հընչմամբ բարեբանողք Հոգւոյն ճշմարտ հոյլք հոգեղինաց. բարեխօս։ Երեքսրբեան ձայնփառաբանողք սուրբ Երրորդութեանն գունդք սերբէից. բարեխօս։

ԹԳՐ. Ով երանելիդ ամենեցուն տիեզերական իշխանութեամբ ընկալար ի Քրիստոսէ ըզթագ պարծանաց. || Ով Թէոդոս մեծ թագաւոր. վասըն մեր բարեխօսեա առ թագաւորն երկնաւոր։ Որ քոյին սուրբ աղօթիւքըդ վանեցեր ըզթըշնամին կոխելով ըզսատանայ. ընդ երկնայինսըն դասեցար. Ով։ Ուստի եւ մեք հաւատացեալքս տօնեմք զքո յիշատակս. օրհնութիւն առաքելով ըզքեզ պըսակողին. Ով։

ԵԽՍ. Որ ըզհուր սիրոյ քո Քրիստոս բորբոքեցեր յոգիս արդարոց. որով վառեալ իմաստութեամբ ե.

րանելին Եւստաթիոս. ընծայեաց զանձն ողջակէզ քեզ կամաւոր. || Բարեխօսութեամբ սորա շնորհեա մեզ տօնողացս ըզքաւութիւն: Որ զարքայութեան քոյ Քրիստոս տարածեցեր ըզայս յաշխարհի. որում տենչացեալ փափագեաց հոգւով երանելին Օքսէն-տիոս. ըզբաժակն արեան արբեալ ուրախութեամբ ընդ քեզ մըկրտելով. Բարե: Որ ըզլոյս փառաց քոց Քրիստոս ծաւալեցեր ընդ տիեզերս. որով զլապ-տեր հաւատոյ լուցեալ երանելին Եւգենիոս. Հե-տեւեաց լուսաշաւիղ քեզ ի յերկինս արեամբ մահու. Բարե: Որ զնշան խաչի քո Քրիստոս ետուր մեզ զէն յաղթութեան. որով զինեալ ընդդէմ մահու ե-րանելին սուրբն Որեստէս. բոցակէզ պատարագաւ քեզ խաչակցեցաւ. Բարե: Որ ըզգրան կենաց քոց Քրիստոս սերմանեցեր յերկիր բանաւոր. զոր ընկա-լեալ պտղաբերեաց յինքեան երանելին Մարդա-րիոս. ի մարմնի անմարմնաբար չարչարելով պսակե-ցաւ. Բարեխօսութեամբ:

ՄՐՏ. Յիշեա զմեզ Աստուած փրկիչ մեր. յորժամ գաս թագաւորութեամբըդ քո կեցո ըզմեզ. || Բարեխօ-սութեամբ սրբոց քոց: Շնորհեա մեզ թողութիւն եր-կնաւոր թագաւոր. ընկալ զաղաչանս մեր կեցո ըզ-մեզ. Բարեխօսութեամբ: Յօրհնութիւն ի նոր օրհնեա-ցուք ըզքեզ Քրիստոս թագաւոր որ վասն մեր մար-մնացար կեցո ըզմեզ. Բարեխօսութեամբ: Զհայր եւ զՈր-դի եւ ըզսուրբ զՀոգին. փառաւորեմք ասելով. Երեք-սրբեան տէրութիւն կեցո ըզմեզ. Բարեխօսութեամբ:

ՀԳ. Որ զմիաբանեալսն յաշտարակին բաժանմամբ լեզուացն քակեաց. այսօր ըզբաժանեալ լեզուս ազգաց միաբանեաց դարձեալ ի սուրբ վերնատանն. ամենայն



Digitized by Google

‖ հոգիք օրհնեցէք զհոգին Աստուծոյ։ Որ էջ հոգին Տեառն եւ առաջնորդեաց երկոտասան ցեղիցն Իսրայելի ի յանապատին. այսօր երկոտասանն առաքելոցն առաջնորդէ ի յաւետարանն. ամենայն հոգիք։ Որ ելից հոգին Տեառն զԲեսելիէլ ճարտարապետ խորանին. այսօր շինէ զմարդիկ խորան սուրբ Երրորդութեանն. ամենայն հոգիք։

ՀՆ. Գալոց է Միածինն փողով եւ փառօք Հօր. եւ ըզհողեղէն բնութիւնս հրեղէն նորոգէ։ Լուսաւոր եւ ճանապարհք արդարոց. եւ ի բիւրաւոր բանակք հրեշտակաց ամպովք ընթանան։ Ի վերինն Երուսաղէմ թռչին ամպովք ընդ առաջ Տեառըն յօդս. եւ այնպէս յամենայն ժամ ընդ Տեառըն լինին։

ՄՄ. Որ ողորմեցար ի մեղս ծնեալ մարդկան Հայր երկնաւոր ըստ մարգարէին. եւ ետուր բնութեանս այսօր պարգեւ ըզկոյսըն սուրբ ըզծնօղ Որդւոյդ միածնի. ‖ մաղթանօք սորա Տէր մեզ ողորմեա։ Որ ցօղեցեր ի մեզ յամպոյ օրինաց Որդիդ այսօր զկոյսըն Մարիամ. յորմէ ծընար մարմնով եւ բարձեր նովաւ ըզմեղս նախաստեղծին Ադամայ. մաղթանօք։ Որ մաքրեցեր զհոգիդ սուրբ ըզսիրտ եւ զարգանդ մօր քո փառակցին. այսօր ամուլ ծնողաց նորին ետուր ըզմայր Բանին փրկչին Եւայի. մաղթանօք։

ԽՋ. Ի վերայ վիմի հաւատոյ շինեցեր ըզքո սուրբ զեկեղեցի. ըզսա պահեա ի խաղաղութեան։ Ո շնորհեցեր ողորմութիւն ի բնակարանըս հրեշտակաց եւ մարդկան քաւարան. տուր սմա զանշարժ զխաղաղութիւն։ — Փառք Հօր։ Ի տաճարի փառաց սըրբութեան քո քեզ երգեն մանկունք. տուր սոցա զառատ քո ողորմութիւն։

— Այժմ և միշտ ։ Որ ի վերայ պատուիրանաց Թագաւորին երկնաւորի․ ըզբաժակ մահու ընկալաւ ի Թագաւորէն և փոխեցաւ ի յերկինս ի լուսեղէն յառագաստն ։

---

## ՑԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԴՁ

Այսօր տօնէ եկեղեցի ընդ յիշատակ սրբոյն Ներսեսի․ Հայաստանեայց լուսաւորչի որդի և քաջ հովուապետի ընտրեալ ի գլուխ հօտին Քրիստոսի․ ‖ Աղաչանօք սորա կեցո զմեզ Տէր Աստուած հարցն մերոց ։ Որ յարմատոյն Աբրահամու վերաբուսեալ ծաղիկ հաւատոյ․ սուրբն Ներսէս սիւն Հայաստանեայց շառաւիղ անմահ տնկոյն պտուղ լուսոյ սուրբ Լուսաւորչին․ աղաչանօք ։ Որ օրհնիս ի հրեղինաց անլռելի ձայնիւ հնչմամբ․ շնորհեցեր մեզ դեղ կենաց զանմարմնական փառօք մաքրեալն ըզհողանիւթ նշխար սրբոյն Ներսեսի․ աղաչանօք ։

Գ․ ԸզՏէր ‖ օրհնեցէք բարձր արարէք ըզնա յաւիտեան ։ Որ յայտնեցան այսօր զգանձն աստուածային․ Հայաստանեայց սուրբ եկեղեցւոյ․ զհայրն երկնաւոր օրհնեցէք ։ Որ ծագեցան այսօր լոյս խաւարելոց․ ի յորդւոց հօրն լուսոյ զորդին միածին գովեցէք բարձր ։ Եկայք մանկունք սուրբ եկեղեցւոյ․ զարդարեալք ի շնորհաց Հոգւոյն զհոգին ճշմարիտ բարեբանեցէք բարձր ։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԴՁ

Զքեզ օրհնութեամբ մեծացուցանեմք ։ 260 ։

ՈՂՈՐՄԵԱ ԴՁ

Որ ասացեր ողորմութեամբ շինել զաշխարհս ի սկզբանէ․ ողորմելով որդւոց Արամայ ետուր յազգէն

արշակունեաց հովիւ ընտրեալ զսուրբըն ներսէս.
Աղօթիւք սորա ողորմեա մեզ Աստուած։ Որ ի
ստունգանել թագաւորացն աստուածային քո օրինաց.
ընդ պատուհաս բարկութեան մերոյ. յառաջնագոյն ժա-
մանակօք յայտնեալ ցուցեր սըրբոյն ներսիսի. աղօ-
թիւք։ Որ պատուական արեամբըդ քո ազատեցեր
զաշխարհս յանիծիցն. փրկեա ըզմեզ ի նեղչաց մե-
րոց. եւ ազատեա յանօրինաց բարեխօսութեամբ սըր-
բոյն ներսիսի. աղօթիւք։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԳՁ

Այսօր զուարճացեալ տօնեն երկնայինքն ընդ
մարդկան. պարակից եղեալ փրկութեան մերոյ.
քանզի յայտնեցաւ մեզ հոգեւոր զանձըն լուսոյ. ա-
րեւելեան արեգականըն ճառագայթ սուրբըն ներսէս.
բարեխօսութեամբ սորա Տէր պարգեւեա զխաղա-
ղութիւն հայաստանեայց աշխարհի։ Այսօր վերըստին
նորոգեցաւ քահանայական գաւազանն. գեղեցկազէ-
ծաղկեալ պայծառութեամբ. քանզի շնորհեցաւ հովի-
ւըն քաջ բանաւոր հօտի. յարմատոյ լուսաւորչին բըղ-
խեալ բուսեալ սուրբըն ներսէս. բարեխօսութեամբ սո-
րա Տէր հաստատեա զիշխանութիւն հայրապետա-
կան աթոռոյ։ Այսօր մեծապէս փառօք ցընծայ թա-
գաւորական գաւազանն. ընդ հաշտութեան սիրոյ
սուրբ հայրապետին. քանզի եհաս ի յօգնութիւն օ-
րինադրողըն թագաւորաց. մարտակից զինուորական
դասուն սուրբըն ներսէս. բարեխօսութեամբ սորա
Տէր բարձրացո զիշխանութիւն թագաւորական
աթոռոյ։

ՄԱՆԿՈՒՆՔ ԵՒ ՀԱՄԲԱՐՁԻ ԴՁ

Որ ընտրեցեր յԱստուծոյ. հովիւ բանաւոր հօ-

տիր որ երանելի տէր սուրբ Ներսէս. արժանաւոր ծծման սուրբ Հոգւոյն աղաւնակերպ իջմամբ որպէս Յորդանան || վասըն ժողովրդեան քո. խընդրեա ի Քրիստոսէ ըզթողութիւն: Որ յարմատոց բըղխեալ բարեաց. ծաղիկ սուրբ Հաւատոյ որ երանելի տէր սուրբ Ներսէս. լուսաւորեցեր ի մանուկութեամբ զեկեղեցիս Հայաստանեայց ընդ սըրբոյ հօր Լուսաւորչին վասըն: Որ յանդիմանելով ըզթագաւորն. Հանգոյն մեծին Յովհաննու որ երանելի տէր սուրբ Ներսէս. եւ ի վերայ պատուիրանաց ըզբաժակ մահու արբեալ ընդ անմահիցըն դասս վերակարգեցար վասըն:

---

# Դ· ԵՐԵՔՇԱԲԱԹԻ· ԴԿ

## Ս. Դանիէլի մարգարէին եւ երից մանկանցն



---

# Դ· ՉՈՐԵՔՇԱԲԱԹԻ· ԱՁ

## Պահոց

### ՑԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԱՁ

Երգէին մանկունքն ի հնոցին եւ ասէին. Տէր Աստուած հարցըն մերոց || օրհնեալ ես յաւիտեան: Մի մատներ ըզմեզ իսպառ ստ անօրէնութեան մերում. վասն Աբրահամու սիրելւոյ քո. օրհնեալ: Էջ հրեշտակն յերկնից եւ զբոց հրոյն շիջոյց եւ փրկեաց զօրհնաբանսն ի ձեռաց մահու օրհնեալ:

Digitized by Google

Գ. Ըզ Տէր Ալէլուիա և ‖ բարձր արարէք ըզնա յաւիտեան: Զորեքկերպեան կենդանիք փառաբանեն ի բարձունս փառօք քեզ Հայր ալէլուիա և բարձր: Վեցթեւեան սերովբէքն աղաղակեն անլռելի. սուրբ սուրբ սուրբ Տէր ալէլուիա և բարձր:

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԱՁ

Որ զհրեշտակին զձայնն լուեալ հիացեալ բեր: 550:

ՈՂՈՐՄԵԱ ԱՁ

Զողորման իմոյ զարտասուս. արկանեմ առաջի քո Քրիստոս. թող ինձ ըզմեղս իմ որպէս երբեմն ըզպոռնկին. ‖ որ միայնդ ես բազմագութ: Անկանիմ առաջի քո Քրիստոս. որ հովիւդ ես բանաւոր հօտի. խնդրեա և զիս ըզմոլորեալս. որ միայնդ: Ըզմեղս իմ ցուցից քեզ Քրիստոս. որ բժիշկդ ես հոգւոց եւ տէր կենաց. բժշկեա և զիմ զհիւանդութիւնս. որ միայնդ:

ՏԷՐ ՑԵՐԿՆԻՑ ԱՁ

Զաստուածն Իսրայելի. ամենեքեան օրհնեսցուք ‖ եւ փառըս տացուք նմա: Միածնի եւ անմահի. երկիւղիւ երկիրպագցուք եւ փառըս: Սուրբ զՀոգին ճշմարտութեան. գոհութեամբ մեծացուսցուք եւ փառ:

---

# Դ. ՀԻՆԳՇԱԲԱԹԻ. ԱԿ

## Ս. Թարգմանչացն Սահակայ եւ Մեսրովպայ

### Ի ԳԻՇԵՐԻ

ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԱԿ

Որք զարդարեցին տնօրինաբար զիմաստս աննեղքն. հաստատելով յերկրի ըզգիր կենդանի հովուել ըզհօտ նոր Իսրայելի. ‖ երգով քաղցրութեան հընչմամբ զԱստուած օրհնեսցուք: Որ զերկրաւոր մեծութիւն փառաց խաւար կոչեցին. ապաւինելով ի յոյս անմահ փե-

սայրին անճառ Բանին արժանի եղեն. Երգով: Որ զօրութեամբ Հօր իմաստութեան էին անեղի. հաստատեցին զաթոռ սրբոյն Գրիգորի թարգմանութեամբ նշանագրութեան. Երգով: Որ նորափետուր բանիւ զարդարեալ պայծառազգեցան. եկեղեցիք Հայաստանեայց ի ձեռըն սրբոյն Սահակայ. Երգով:

† Որ թագաւորաց ազգաց եւ ազանց զերագոյն ցուցին. արփիափայլ զերգըս հոգեւորս ընտրեալ դասուց վերին Սիովնի. || անմատոյց լուսոյն երկրպագեսցուք: Որ խորհրդեամբ ճըշմարիտ լուսոյ փառաց անեղին. նըկարագրեցաւ մեզ գիր կենդանի յարգանդ մաքուր մեծին Մեսրովպայ. անմատոյց: Որ զծածկեալ խորհուրդ աստուածգիտութեան. տնօրինաբար յայտնեալ ծանուցին հանգոյն սրբոյ մեծին Մովսէսի. անմատոյց: Որ յօրինակ ճըշմարիտ սիրոյ սուրբ առաքելոցն. աղբերաբար ի ձեզ էջացաւ հոգի շնորհաց բըղխումն անըսպառ. անմատոյց:

ԱՌ. Ի մաքրագործ Հոգւոյն անօթ ընտրեալ եւ ձիւնափայլ. Թագաւորք երկրի իշխանք աշխարհի. անպակաս գանձուց բաշխող Յակովբ Ալփեան Յուդա Յակոբեան. բարեխօս լերուք առ Տէր վասն անձանց մերոց: Երեքսըրբեան մի տէրութեան խորհուրդ կամաց եւ հազարապետք. փողոց հընչմունք բարբառք աւետեաց ընդ ամենայն երկիր սուրբըդ Շմաւոն և Մատաթիա. բարեխօս լերուք առ Տէր վասն անձանց մերոց: Բանին կենաց կանուխ քարոզ եւ աւետարանիչ. երգ փըրկութեան հընչումն ահաւոր. ազգի մարդկան պարծանք սուրբըդ Մատթէոս. բարեխօս լեր առ Քրիստոս վասն անձանց մերոց:

ՀԱՅՐ. Այսօր ընդ երկնային զըւարթունսըն ժողո-

վուրդք Հայաստանեայց. տօնելով ըզյիշատակ սուրբ Հայրապետաց չարաւիրաց սրբոյն Գրիգորի. օրհնեցէք ըզՀայրն երկնաւոր։ Այսօր որդիք Թորգոմայ ծընեալք աւազանաւն յորդիս Սիովնի. ի յիշատակի Հարցըն սըրբոց որդւոց մեծի Լուսաւորչին. գովեցէք զՈրդին միածին։ Այսօր երկնաւոր քահանայութեանն Հաղորդ քահանայք սուրբ եկեղեցւոյ. ընդ քահանայապետս աստուածային օրհնօք պատուեալս բարեբանեցէք զՀօգին ճըշմարիտ. երգելով ըզփառս ի բարձունս։

ԹԳ. Որ զարդարեալ գեղապանծ վայելչութեամբ զսուրբ զեկեղեցի. պըսակեցեր առաքելովք եւ մարգարէիւք եւ Հաստատեալ ամրացուցեր սուրբ Թագաւորօք. Բարեպաշտութեամբ սորա Քրիստոս խընկեալ է մեզ։ Որք զինու զօրութեամբ Հոգւոյն վառեալք ի պատերազմի. վանեցին ըզմոլութիւն Հերձուածողաց եւ ի Հաւատըս ճըշմարիտս Հաստատեցին ըզտիեզերս. Բարեպաշտութեամբ։ Որ շնորհեցեր յաշխարհի Թագաւորել մեծին Թէոդոսի. եւ կատարեալ ըզկեանս Հաւատով ուղղափառութեան վերափոխեցեր այսօր յերկնից Թագաւորութիւնդ. բարեպաշտութեամբ սորա Քրիստոս խընկեալ է մեզ։

ԱՏՄ. Աղաչեմք ըզքեզ Տէր բարեխօսութեամբ սըրբոց Ատովմանց. որք նահատակեցան ի ճակատամարտ պատերազմի յաղթող գըտան ընդդէմ Թըշնամւոյն. Բարեխօսութեամբ սոցա Քրիստոս խընկեալ է մեզ։ Որք առին ըզսպառազինութեան ըզրահըն Հաւատոյ սըրտից իւրեանց. եւ ընկալան ի գլուխ սաղաւարտ փըրկութեան ըզնըշան խաչին սուսեր ընդ մէջ ածեալ ըզճըշմարիտ սուրբ Հոգին. բարեխօսութեամբ։ Որք մաքրեցին զանձինս իւրեանց տաճար անուանեալ քամ

Digitized by Google

սրբոյ. եւ բուրեալն հոտ անուշութեան զաղօթս իւրեանց ի տեղւոջ հեղման սուրբ արեան իւրեանց. բարեխօսութեամբ ։

Հգ. Որ յերկնային զօրս անմարմնոցն նախ հեղեր առատապէս հոգիդ ճշմարիտ. զաստուածային եւ զգերազոյն քո իմաստութիւնդ լինել փառաբանիչ սուրբ Երրորդութեանդ. ‖ ընդ նոսին փառաւորեմք զերրեակ միութիւնդ ։ Որ զկերպարանն աստուածային ստեղծեալ Երրորդութեանդ խորհրդակցութեամբ. զարդարեցեր փրկչամբ շնորհաց քոց կենդանարար. եւ ընդ ծնեալսն առ ի նմանէ խօսեցար օրինօք եւ մարգարէիւք. ընդ նոսին ։ Որ յերկրորդի լինելութեանս յետ յարութեան քում էակցին. մտեալ ի վերնատունն դրօքըն փակելովք շնորհելով ըստ առաջին փրկչանն ըզքեզ մխտամանից առաքելոցն ասաց առէք հոգի սուրբ. ընդ նոսին ։

Հն. Յորժամ յերկնից գոչէ փողն ազդեցութիւն առնելով տիեզերաց ի դատաստանն ահաւոր. յայնմ աւուր յահեղին ‖ յիշեա Տէր եւ ըզմեր ըզնընջեցեալսն եւ հանգո ընդ սուրբս քո ։ Յորժամ ճառագայթք աստուածութեանդ փայլեն ի յարեւելից. եւ զօրութիւնքդ հրաշիցն բանին յայնմ աւուր յահեղ. յիշեա ։ Զարհուրեալ դողան արարածք ի ձայնէ սրովբէագոչ փողոյն. յորժամ հարկանէ հրեշտակապետն եւ կոչէ ի դատաստանն զազգս որդւոց մարդկան. յայնմ աւուր յահեղին յիշեա ։

Մծ. Ով զերահրաշ ծաղիկ բուրեալ յԵդեմայ. հոտ անմահութեան ծնընդոցս Եւայի յորմէ սփռեցաւ մահ ընդ տիեզերս օրհնութեամբ ըզքեզ մեծացուցանեմք ։ Դու ես լուծիչ երկանց բարձող անիծից. ծագումն ա-

բեւեռ լուսոյն ճշմարտի որով հերքեաւ խաւարն առա-
ջին. ‖ Օրհնութեամբ զքեզ մեծացուցանեմք: Զ-
քեզ ունիմք բարեխօս կոյս անհարսնացեալ մայր ա-
նարատ Էմմանուէլի տաճար Բանին Հօրն երկնաւո-
րի. Օրհնութեամբ:

ԽՋ. Խաչ քո եղիցի մեզ ապաւէն բոցանեշ փայլ-
մամբն իւրով. խորտակեաց զթշնամին եւ ելոյծ զ-
դատակնիք. անուանեալ փայտըն կենաց ի փրկութիւն
տիեզերաց: Վերառեալ ցընծան երկինք եւ երկիր
ուրախանայ. ընդ յայտնել սրբոյ խաչին սեռակնաձեւ
քառաթեւին. որ զաշխարհըս լուսաւորեաց արեգակնա-
կերպ ճառագայթիւք: — Փառք Հօր: Ցընծացաւ
Երուսաղէմ բերկրեցան հաւատացեալք. նորահրաշ զար-
դարեցան քանզի տեսին զյաղթող նըշանն. արարածք
ամենայն ի լուսոյն պայծառացան:

— Այժմ եւ միշտ: Որ երկոքումբք սուրբ լուսաւոր-
չօք տանըս Թորգոմայ. հաստատեցեր զեկեղեցիս հա-
յաստանեայց զլոյս իմաստից ի մեզ ծագելով. մաղթա-
նօք սոցա Քրիստոս խընայեա ի մեզ:

---

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

### ՀԱՐՑ ԴՋ

Սքանչելագործ Աստուած որ ցուցեր զսքանչելիս
քո ազգի մարդկան. ‖ Օրհնեմք զքեզ Տէր Աստուած
հարցըն մերոց: Որ ի ձեռն երանելի վարդապետին
արարեր ողորմութիւն ազգի մարդկան. Օրհնեմք: Որ
սովաւ լուսաւորեցեր զտիեզերս. սորին բարեխօսու-
թեամբ պահեա զմեզ. Օրհնեմք:

Գ. ԶՏէր Ամենայն գործք Աստուծոյ եւ ամենայն
արարածք օրհնեցէք սուրբ եւ խոնարհ սրտիւք գովե-
ցէք եւ առաւել բարձր արարէք զնա յաւիտեան:

Digitized by Google

Հրեշտակ երեւեցար ի յերկրի եւ վարս ունէիր Աս-
տուածոյ հաճոյական. յիշեսջիր ըզմեզ անդադար երանե-
լի սուրբ վարդապետ որ ընդ հրեշտակս օրհնես
զԱստուած յաւիտեան: Ստացող եղեր պատուիրանաց
սուրբ Հոգւոյն եւ ապրեցար ի հաղբից հրապուրողին.
կատարեցեր զառաքինութիւն և փոխեցար ի հանգիս-
տըն յաւիտենից: Արդ եկայք ամենեքեան միաբան.
աղաչեսցուք յօրինակ ճըգնութեան զերանելին. զի նմա-
նեսցուք վարուց նորա և փոխեսցուք ի կեանսըն յա-
ւիտենից:

ՄՆԾԱՑՈՒՍՑԷ ԴՁ

Զքեզ օրհնութեամբ մեծացուցանեմք: 260:

ՈՂՈՐՄԵԱ ԴՁ

Որ ըզշնորհս աստուածային առ ի վերուստ իջեալ
յերկնից. պարգեւեցեր հիւսիսականացս ի ձեռըն
սուրբ վարդապետին. ‖ աղաչանօք սորա ողորմեա մեզ
Աստուած: Որ զանմարմին պարունակող բանի զգրա-
ւորական զիմաստ Հոգւոյն. շնորհեցեր որդւոց Թորգո-
մայ յայտնեալ տեսլեամբ ի ձեռըն սուրբ վարդապե-
տին. աղաչանօք: Որ զգիտութիւն քո զերկնային եւ
զհոգեւոր զիմաստութիւն. առատապէս ծաւալեցեր
յեկեղեցիս Հայաստանեայց ի ձեռըն սըրբոց Թարգ-
մանչացն. աղաչանօք:

ՏԷՐ ՑԵՐԿՆԻՑ ԴՁ

Անճառելի շնորհօք լըցեալ ի յիշատակի սուրբ
վարդապետին խընդրեմք ի քէն. ‖ Տէր կեցո զանձի-
նըս մեր: Եւ ըզճըգնութիւն սըրբոյ վարդապետին. ըն-
կալցուք ի սիրտըս մեր հաւատով. բարեխօսութեամբ
սորա Տէր: Դասաւորեալ ընդ անմարմնական բազմու-
թեան եւ ի սըրբոյ Հոգւոյն է պըսակեալ. ի ձեռըն
սորին բարեխօսութեան. Տէր:

Digitized by Google

ՄԱՆԿՈՒՆՔ ԴԶ

Նըմանեալ Մովսէսի տէր վարդապետ. բերելով ընդ իւր օրինաց ի Հայաստան աշխարհս. որով լուսաւորեցան ազգ որդւոց Թորգոմայ։ Քանզի նա արժանաւորեցաւ կեալ ի սինէական փառաբանութեանն. և ընկալեալ պատգամըս կենդանիս որ Իսրայէլեան բանակին. որով և լուսաւորեցան ազգ որդւոց Յակովբայ։ Արդ աղաչեմք ըզքեզ հեզութիւնդ տէր վարդապետ. բարեխօսեա առ Հայր ի յերկինըս վասըն քո տօնողացս. քանզի քեւ և լուսաւորեցան մանկունք սուրբ եկեղեցւոյ։

---

ՅԵՐԵԿՈՅԻՆ

ՀԱՄԲԱՐՁԻ ԴԿ

Որ յարմատոյ հարցըն սըրբոց մեզ գաւազան բըղխեցեր. ըզհանհակ սուրբ հայրապետ հովուել ըզհօտ քո Քրիստոս։ Որ ըզխաւարն անգիտութեան Հայաստանեայցըս լուծեր. գիմաստութեան ծագեալ ըզլոյս ամենայն որդւոց Թորգոմայ։ Որ զհանդերձեալ խորհուրդ քո Տէր տեսլեամբ սըրբոյն ծանուցեր. յիշատակի սորա ընկալ ըզտօնողացս աղաչանս։

---

# Դ· ՈՒՐԲԱԹ· ԲԶ

Պահոց

ՅԱՒԱՐՏՈՒ ՀԱՐՑ ԴԶ· Օրհնեմք զքեզ։ 140։

---

# Դ· ՇԱԲԱԹ

Ս· Զաքարիայ մարգարէին եւ Ոնոփրիոսի սուրբ Հօրն

Ի ԳԻՇԵՐԻ ՕՐՀ· ԱԿ· Որ զաստուածային զօրու։ 881։

Digitized by Google

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

### ՀԱՐՑ ԱՁ

Որ յերկնային զինուորութեանցդ անդադար ձայնիւ երեքսըրբեան օրհներգութեամբ փառաբանիս. || Հարցըն մերոց Աստուած օրհնեալ ես յաւիտեան: Որ շնորհեցեր մարգարէիցն աւետարանել ըզկենսաբեր տնօրէնութիւնըդ քո ի սուրբ կուսէն. Հարցըն: Որ պարգեւօք սուրբ Հոգւոյն վերափոխեցեր ըզսիրելիսըն քո յերկնային խորանսն. Հարցըն:

Գ. ԸզՏէր օրհնեցէք || և բարձր արարէք ըզնա յաւիտեան: Եկեղեցիք հեթանոսաց կոչեցեալք ի Քրիստոսէ. յաղբերացն Իսրայելի օրհնեցէք ըզՏէր. և բարձր: Քահանայք եւ պաշտօնեայք ընդ վերին զըւարթունսն. հոգեւոր հընչմամբ երգով գովեցէք ըզՏէր. եւ բարձր:

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԱՁ. Զքեզ երևեալ դուռն առ: 196:

Իսկ ՈՂՈՐՄԵԱ և ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ զԱնտոնէին առա:

### ՈՂՈՐՄԵԱ ԱՁ

Որ անմարմնական վարուք պայծառացեալ ի մարմնի զօրացեալ Տէրամբ. ով սուրբ հայր Անտոնիոս. եղեր օրինակ բազմաց եղեր դուռըն մըտից կենաց ճանապարհին. || յիշեսջիր ըզմեզ առաջի Քրիստոսի քո սուրբ և արժանընդունակ աղօթիւք: Որ առեր ըզլուծ խոնարհութեան համբերող խոստամբերութեամբ. եւ պարակցեալ օրհնութեամբ ընդ հրեշտակս. եւ խաչակրօն անդադար սաղմոսերգութեամբ. յիշեսջիր: Վասն որոյ եւ մեք այսօր տօնեմք ըզհանգըստեան օր յիշատակի քո. անմոռաց յիշմամբ հայցեսցես ի Քրիստոսէ զմեծ ողորմութիւն. քո սուրբ և արժանընդունակ աղօթիւք:

### ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԱՁ

Որ շնորհօք սուրբ Հոգւոյն բարձեր ըզխաչըն փըրկ-

Digitized by Google

չական յորդեգրութեան շնորհս. ով սուրբ հայր Անտօ-նիոս. արժանաւոր երկնային կոչմանն ի հրեշտակական դասակցութիւնս. || օրհնեմք միշտ սուրբ զծերբարդու-թիւնն: Այսօր և մանկունք սուրբ եկեղեցւոյ տօնեն ըզխաչանկրօն քո սուրբ զյիշատակս. ով սուրբ հայր ճըգնաւորաց. զի ընկալցին զանապական պարգեւսն ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ. օրհնեմք: Զաստուածապար-գեւս վերընկալեալ ըզփառս յաջակողմեանըն Քրիստոսի ընդ իմաստուն կուսանսն. հայցեա մեզ ի Քրիստոսէ ըզթո-ղութիւն մեղուցելոցս. ի լսել ըզձայնն եթէ եկայք օրհ-նեալք Հօր իմոյ ժառանգեցէք ըզկեանսն յաւիտենից:

Առաւօտու Ներբ Մարգարէից

ՄԱՆԿՈՒՆՔ ԴՁ. Որ զյառաջագոյն ընտրեալսն: 887:

---

ՑԵՐԵԿՈՑԻ ՀԱՄԲԱՐՁԻ ԱՁ. Սուրբ ես Տէր և Եր-կնաքաղաքացին: 110:

---

# Ե · ԿԻՒՐԱԿԷ · ԳՁ

## ԶԿՆԻ ՊԵՆՏԵԿՈՍՏԷԻ

### ՅԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԱԿ

Որ եկիր ի փրկութիւն վասն ազգի: Խաչ առաւօտն: 572:

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԱԿ. Որ զկեանքն անմահարար մահ: 206:

---

ՑԵՐԵԿՈՑԻ ՀԱՄԲ. ԳՁ. Ա. Իւղաբեր և սուրբ: 38:

---

# Ե · ԵՐԿՈՒՇԱԲԱԹԻ · ԳԿ

## Ս. Տրդատայ Թագաւորին եւ Աշխէն տիկնոջ եւ Խոսրովիդխտոյ

Զամենայն ինչ շնորհատուին ասա: 855:

---

# Ե. ԵՐԵՔՇԱԲԱԹԻ. ԴՋ

## Ս. Հայրապետացն որդւոց եւ Թոռանց սրբոյն Գրիգորի Լուսաւորչի, Արիստակիսի, Վրթանիսի, Յուսկանն, Գրիգորիսի եւ Դանիելի

Ի ԳԻՇԵՐԻ ՕՐՀ. ԴԿ. *Արմատ ճշմարիտ աստուած*: 838:

### ՅԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԱԿ

*Որ ըղձիւ աստուածային քո գիտութեան հիւսիսական ազանց ծագեցեր. եւ ի խաւարէ կռապաշտութեան վերածեր ըզմեզ ի ձեռն սուրբ Լուսաւորչին. Օրհնեմք ըզքեզ Աստուած հարցըն մերոց: Որ վերստին զարդարեցեր զեկեղեցիս Հայաստանեայց. արփիափայլ ճառագայթիւք լուսազարդեալ շառաւիղօք սրբոյն Գրիգորի. օրհնեմք: Որ ըզբան քո հրամանի քարոզեցին հաւատացելոց. յանդիմանելով ըզբռնութիւն թագաւորաց եւ ի վերայ աստուածային քո օրինաց նահատակեցան. օրհնեմք:*

*Գ. Ըզտէր օրհնեցէք եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան: Որ գերագոյն հնոյ օրինաց քահանայութեան զնորըս զարդարեաց. եկեղեցիք հեթանոսաց ըզնորոգող բնութեանս Քրիստոս. օրհնեցէք: Զքահանայապետըն ճշմարիտ ըստ կարգին Մելքիսեդեկի. ի յիշատակի քահանայապետացս աստուածայնոց քահանայք հոգեւոր երգով. օրհնեցէք:*

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԱԿ

*Ով զերահրաշ ծաղիկ բուրեալ յԵդեմայ. Հոտ*: 211:

ՈՂՈՐՄԵԱ ԱԿ

*Որ հրաւիրեցեր զորդիս մարդկան յորդեգրութիւն Հօր քո Որդի Աստուծոյ. եւ կոչեցեր յարքայութեան քո ժառանգութիւն ի ձեռն սուրբ Հայրապետաց.*

Digitized by Google

‖ աղօթիւք սոցա ողորմեա։ Որ լուսաւորեցեր զեկեղեցիս Հայաստանեայց լուսով քո Քրիստոս. եւ զարդարեալ նորոգեցեր պայծառ ծաղկամբ չարչարանօք սըրբոյն Գրիգորի. աղօթիւք։ Որք զընթացս իւրեանց կատարեցին ըստ հաճոյից կամաց քոց Քրիստոս. նահատակեալքդ ճգնութեամբ ընդդէմ թշնամւոյն. եւ փոխեցան յերկնից արքայութիւնն. աղօթիւք։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԱԿ

Այսօր ընդ երկնային զուարթունսըն ժողովուրդք հայաստանեայց. տօնելով ըզյիշատակ սուրբ հայրապետաց չարչարանաց սըրբոյն Գրիգորի. օրհնեցէք ըզՀայր երկնաւոր։ Այսօր որդիք Թորգոմայ ծընեալք աւազանաւն յորդիս Սիոնի. ի յիշատակի հարցըն սըրբոյ որդւոց մեծի Լուսաւորչին. գովեցէք զՈրդին միածին։ Այսօր երկնաւոր քահանայութեանն հաղորդ քահանայք սուրբ եկեղեցւոյ. ընդ քահանայապետս աստուածային օրինօք պատուեալս բարեբանեցէք զՀոգին ճըշմարիտ. երգելով ըզփառս ի բարձունս։

ՄԱՆԿՈՒՆՔ ՆԻ ՀԱՄԲԱՐՁԻ ԴԿ

Աստուածային հաւատոյ հարցըն սըրբոց դաւանողն. ծաղկեցաւ քեւ ընդհանուր լոյս Հայաստանեայց սուրբ Ռըստակէս. ‖ անդադար բարեխօսեա վասն անձանց մերոց։ Բանաւոր հօտին Քրիստոսի ընտրեալ հովիւ քաջ. ի հօրէն լուսոյ բըղխեալ շառաւիղ բարի. տէր Վըրթանէս. անդադար։ Գովեալդ ի վերին հօրըն մեծի համանման. քաջութեամբ զանօրինաց խորտակեալ զպատկերն Տէր սուրբ Յուսիկ. անդադար։ Դասակցեալ անմարմնոցն մաքուր կուսութեամբ. ճըշմարիտ քահանայապետ վերին Քրիստոսի սուրբ Գրիգորիս. անդադար։ Երկնայնոցն ի յերկ-

հաղորդ ճըգնութեամբ. յանդիմանելով ըզթագաւորըն կատարեցար վասն անուանըն Տեառն սուրբ դանիէլ. անդադար:

# Ե. ՉՈՐԵՔՇԱԲԱԹԻ. ԴԿ

## Պահոց

ՑԱՌԱՒՕՏՈՒ ՀԱՐՑ ԱՁ. Բարեբանեալ : 196 :

# Ե. ՀԻՆԳՇԱԲԱԹԻ. ԱՁ

## Ս. Եղիսէի մարգարէին

### Ի ԳԻՇԵՐԻ

### ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԱԿ

Որ զաստուածային զօրութիւնըդ քո ծանուցեր հոգւով ճըշմարիտ. բաշխելով իշխանաբար ըզպարգեւըս քո տեսանողաց մարգարէիցն ի սկըզբանէ. Բարեխօսութեամբ սոցա խընայեա ի մեզ: Որ մաքրեցեր բնակարան աստուածութեանըդ քո սուրբ ըզմարգարէսն. եւ աղբերաբար հեղեր յանձինըս նոցա զանապական եւ զերկնային շնորհաց քոց բըղխումն. Բարեխօսութեամբ: Որ յայտնեցեր ըզծածկեալ խորհուրդ քոյոց սիրողաց. եւ անճառելեաց ապագայից պատմողս արարեր տնօրէնութեան քում էակցի Բանիդ Աստուծոյ. Բարե:

÷ Որ առաքեցեր նախընթաց քում գալըստեանդ սուրբ ըզմարգարէսն. աւետարանել տիեզերաց զիջումըն քո ի հայրական ծոցոյ ի փըրկութիւն հեթանոսաց. Բարեխօսութեամբ սոցա Քրիստոս խընայեա ի մեզ: Որ խոնարհեցար յանպատում փառաց Որդի Աստուծոյ. եւ եկիր ի կատարումըն մարգարէիցըն նախաձայն քարոզութեանցն անճառ խորհըրդով. Բարեխօս:

ՑՈՎ. Ծրագ օրինացըն Մովսեսի լուսատու տանն իսրայելի. եւ իմանալի արեգականըն յառաջ ընթացաւ

ի յերկիր ծագմանն ի կուսէն. Այս Քրիստոս բարե-
խօսեալ փառն անձանց մերոց: Մերկրպագել ըղբու-
րից Աստուածն այս քեզ եկեալ հրաժարէիր. տեսան-
լով զգերապայծառ լոյս աստուածութեանն ընդ հոգե-
ղէն բնութեամբ պարունակեալ. այս: Ցորժամ էլ ի
Յորդանան հուրն Աստուած ի քէն մերկրպագել. վերա-
կան իշխանութիւնքըն զահի հարեալ զարմանային
նորահրաշ տեսլեամբն. այս:

ԱՌ. Ի յանսահման ծովէն Հօր գթութեանց բղխե-
մունք. եւ սուրբ առաքեալք. անդրանիկ խորհուրդք
լոյս գերազանց. երկոտասան ազգաց պըսակ սուրբ ե-
կեղեցւոյ. Բարեխօս լերուք այս Տէր փառն անձանց
մերոց: Աշխարհակիր Թադէին բազկաց եղեալ հիմունք
սրբոյն Սիոնի. լերուք անշարժք հովիւք ծաղկածին
հայրազատ վէմք հաւատոյ Պետրոս եւ Անդրէաս. բա-
րեխօս: Ի բարեբուն Հոգւոյն վըտակք եւ որոտմունք
տիեզերաց. ցոլմունք հրեղէնք աստեղք լուսափայլք
Յիսուսի Թագաւորին փայլակք լանջաց սուրբ Յովհաննէս
եւ Յակոբոս. բարեխօս:

ՀՐ. Որ հրաւիրեցեր զորդիս մարդկան յորդեգրութիւն
Հօր քո Որդի Աստուծոյ. եւ կոչեցեր յարքայութեան
քո ժառանգութիւն ի ձեռըն սուրբ հայրապետաց.
Աղօթիւք սոցա ողորմեա: Որ լուսաւորեցեր զեկե-
ղեցիս Հայաստանեայց լուսով քո Քրիստոս. եւ զարդա-
րեալ նորոգեցեր պայծառ ծագմամբ շնորհաւորօք սըր-
բոյն Գրիգորի. աղօթիւք: Որք զընթացս իւրեանց
կատարեցին ըստ հաճոյից կամաց քոց Քրիստոս. նա-
հատակեալքըք ճըգնութեամբ ընդդէմ թշնամւոյն. եւ
փոխեցան յերկնից արքայութիւնդ. աղօթիւք:

ՄԱՐՏ. Ըզյիշատակ սրբոց մարտիրոսացն. այսօր

տօնէ եկեղեցի հըռչակելով ըզծընգնութիւն սոցա Հայր երկնաւոր. || ողօթիւք սոցա ողորմեա։ Հրաշազարդ և պայծառ առաքինութեամբ քարոզեցին ըզքեզ տիեզերաց. քանզի իջեր ի Հօրէ և մարմնացար ի սրբոյ կուսէն Որդիդ միածին. ողօթիւք։ Անուշահոտ բուրմամբըդ քո լցին ըզտիեզերըս կենսաբեր աւետեօք. եւ ընդ վերին դասակարգութիւնսըն համաձայնեալ բարեբանեն ըզքեզ Հոգիդ ճըշմարիտ. ողօթիւք։

ՀԳ. Որ առաքեցար ի Հօրէ Հոգիդ անեղ եւ համագոյ. աղաչանօք տնօրինաբար քում էակցին լինել մըխիթարիչ սուրբ առաքելոցն. || աղաչեմք ըզքեզ ողորմեա։ Որ իջեր տիրաբար յերկնից սաստիկ հողմոյ նըման Աստուած յայտնապէս. եւ ի հրեղէն լեզուս բաժանեալ հանգեար ի դասս առաքելոցն. աղաչեմք։ Որ արբուցեր երկնաւոր գինեաւն իմաստութեան զհոգիս սրբոց քոց առաքելոցն. որք արբուցին ըզտամեցելոց որդւոց Ադամայ ըզբաժակն ուրախարար յայգւոյն Եդեմայ. աղաչեմք։

ՀՆ. Յորժամ յերկնից գոչէ փողն ազդեցութիւն առնելով տիեզերաց ի դատաստան ահաւոր. յայնժամ աւուր յահեղին || յիշեա Տէր եւ ըզմեր ըզննջեցեալսն եւ հանգո ընդ սուրբըս քո։ Յորժամ ծառագայթք աստուածութեանըդ փայլեն ի յարուելից. եւ դըպրութիւնըք հրաշիծցըն բանին յայնմ աւուր յահեղ. յիշեա։ Զարհուրեալ դողան արարածք ի ձայնէ սոսկալագոչ փողոյն. յորժամ հարկանէ հրեշտակապետն եւ կոչէ ի դատաստան զազգս որդւոց մարդկան. յայնմ աւուր յահեղին յիշեա։

ՄԾ. Որ նախիմաց իմաստութեամբ տնօրինեցեր զխորհուրդ սուրբ եկեղեցւոյ. խորագոյն երկեալ հի-

մունս հաստատութեան ընդդասս արդարոց. Անդաչանօք սոցա խընայեա ի մեզ: Որ զօրհնութիւն Նախաստեղծիցն աստուածազգեստ արուաց եւ իգաց. պայծառացեալ վայելչապէս ծաղկեցուցեր այսօր ի Յովակիմ եւ ի յԱննա. անդաչանօք: Որ ըղխօստումն Աբրահամու նահապետին մեր ըստ հոգւոյ. քահանայական և թագաւորական գաւազանացըն միացեալ ցուցեր այսօր ի յԱննայէ. անդաչանօք:

ԽԶ. Ի վերայ վիմի հաւատոյ հիման առաքելոց եւ մարգարէից. չինեցեր ըզքո սուրբ զեկեղեցի եւ ի սմա միաձայնեալ եղեն մարդիկ ընդ հրեշտակս. փառաւորելով սուրբ զԵրրորդութիւնդ: Տեղի ապաւինի և ժողովարան բանաւոր հօտի. բընակարան հրեշտակաց նաւահանգիստ արդարոց և մեղաւորաց քաւարան. զարդարեալ առաքելովք եւ մարգարէիւք:

— Փառք Հօր: Բանն Աստուած և ծածկեալ խորհուրդըն յաւիտենից. իջեալ ի յերկնից մարմնացեալ ի կուսէն խաչեալ յերկրի և թաղեալ ի նոր ի գերեզմանի. եւ յարուցեալ յերրորդ աւուր զի զմարգարէիցն ըդտառսըն կատարեսցէ:

— Այժմ և միշտ: Որ լուծեր կենարար մահուամբ քո Տէր զերկունըս մահու. իջանելով ի դժոխըս վերածեր ընդ քեզ զհոգիս արդարոց մարգարէիցն ի լոյսն անըստուեր. բարեխօսութեամբ սոցա Քրիստոս խընայեա ի մեզ:

---

ՅԱՌԱՒՕՏՈՒ

ՁԱՅՆ ԴՁ

Որ ընդ հողեղէն բնութեան մերոյ խառնեցեր ըզբանական հոգիս. ունել զօրութիւն ընդունելոյ զաստուածային և զհոգեւոր ըզշնորհս իջեալ ի վերուստ. Օրհնեալ Տէր Աստուած հարցըն մերոց: Որ շնոր-

հեղեր մաքուր հոգւոց յիսրայելի զհոգի մարգարէութեան. որով ծանուցեր յառաջագոյն բազմապատիկ օրինակօք զանճառելի խորհուրդ քո մարդեղութեանդ. օրհնեալ։ Որ զանեղ գոյիդ լինելութիւն իբրեւ զեղեալ տեսանէին. յառաջնորդական միտս նոցա տըպաւորեալ հոգիդ ըզկերպարան իրին գերագոյն հրաշիւք ի վեր քան ըզբան. օրհնեալ։

Գ. ԸզՏէր ‖ օրհնեցէք բարձր արարէք ըզնա յաւիտեան։ Ընդ աւետաւորսն յառաջագոյն փըրկութեան մերոյ. ծափս հարէք եկեղեցիք հեթանոսաց աղաղակելով ըզՏէր օրհ։ Ընդ տեսանողաց մարգարէից հինն իսրայելի. քահանայք նորոյ ուխտիս ըսպասաւորք ըզՏէր օրհնեցէք։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԴՁ

Որ ի բարձրութիւնս երկնից բարձրը բանիւք բարեբանիս Սըրբուհի. Ի Լիբանանէ դիմեալ հարսըն զգեցեալ այսօր զարեգակն արկեալ ըզգքեւ եւ ընդ ոտիւք զլուսինն ստուերատեսակ. ‖ օրհնութեամբ երգով եկեղեցիք տիեզերաց այսօր տօնեն ըզյիշատակ ծննդեան քո ի մօրէ։ Վեհագոյն սերովբէից եւ բազմաչեայ քերովբէից տիրամայր Աստուածածին. տապանակ կըտակի սափոր ոսկի խորհըրդաւոր խորան Բանին Հօր բարձրելոյ. օրհնութեամբ։ Մարգարէից հանդիսարան եւ գրաւական կենաց մարդկան Մարիամ աստուածամայր. ընդունարան եօթնարփին շնորհացն խարիսխ յուսոյ հաստատութեան զուգաթիւ աւուրց զարուցս անձաւորաց. օրհնութեամբ։

ՈՂՈՐՄԵԱ ԴՁ

Որ աւետաւոր քում գալըստեանդ առաքեցեր յաշխարհ ըզսուրբ մարգարէսն. եւ եկեալ խոնարհու-

թեամբ նոր օրինօք զԹերին լցեր ի գիրս օրինաց և մարգարէից. Լ բարեխօսութեամբ սոցա Քրիստոս ողորմեա մեզ։ Որ կոչեցեր մարգարէիւք յառաջագոյն ընդհեթանոսս քեզ նոր ժողովուրդ. և ընդդիմաւոր Սիոնի զեկեղեցի հեթանոսաց հարսն սիրելի անմահ փեսային. բա։ Որ ընդփոխանակ տաճարին զոր շինեցեր շինողդ էիր ի վերայ վիմին. բարձրագոյն քան զառաջինն և գերազարդ վայելչութեամբ տեսանողքն ծանուցին իմաստիւք Հոգւոյն. բարե։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԴՋ

Այսօր ժողովուրդք որք ի հեթանոսաց. հրաւիրեալք յառաջագոյն մարգարէիւք զալ առ Աստուած Աբրահամու յերկրպագութիւն. օրհնեցէք զՏէր յերկինս ընդ երկնաւորացն։ Այսօր որդիք գլխաւոր վերին Սիոնի. շինեալք ի վերայ հիման առաքելոց և մարգարէից. որք և ընկալէք զառատաբուղխ վտակ Հոգւոյն ի յաղբերացն Իսրայելի յեկեղեցիս սրբոց. օրհնեցէք զՏէր յօրհնութիւն ի Նոր։ Այսօր վերին զօրացըն համաձայնեալ. դասք նահապետաց և մարգարէից. երգեն Աստուծոյ զերգըս հոգեւորս. ի յիշատակի սոցա երգեմք և մեք ընդ փառս ի բարձունս։

ՄԱՆԿՈՒՆՔ ԴԿ

Այսօր ցընծայ զուարճացեալ եկեղեցի հեթանոսաց. տօնելով զյիշատակ մեծի նահապետին և հօրըն հաւատոց Աբրահամու. օրհնեցէք մանկունք Սիոնի զՀայրըն լուսոյ անճառելի։ Այսօր նոր Իսրայէլ. կոչեցեալ մարգարէիւքն առ Աստուած. տօնեա ցնծութեամբ ընդ տօն հովուացն Իսրայելին առաջնոյ. զովելով ընդգլուխ անկեան երկուց որմոց յարմարութեան։ Այսօր ի գլուխս լերանց. տուն Աստուծոյ հաստա-

տեան. որ և յաւէտ ոռոգիս յամպոց Հոգւոյն աստուածաբուղխ առատահոսս անձրևօք. բարեբանեա զաղբիւրըն կենաց զարբուցանողըն ծարաւեաց։

---

## ՑԵՐԵԿՈՑԻՆ

### ՀԱՄԲԱՐՁԻ ԴՁ

Որ զյառաջնագոյն ընտրեալսն առաքեցեր յաշխարհս սուրբ զմարգարէսն. աւետարանել ըզքո գալուստ անթարգմանելի տնօրէնութեամբ. ‖ սոքօք շընորհեա հաստատութիւն եկեղեցւոյ քում սրբոյ։ Որոց ետուր իշխանութիւն բացատրել զիջումըն քո յաշխարհս. աստանօր կատարեցեր զմարգարէիցն ըզտեսութիւն. սոքօք։ Որ ըզմահ գերի առեալ մահուամբ ըզմահ կոխեցեր. արձակելով զերամբս մարգարէիցըն յանըստուեր քո հանգիստ. սոքօք։

---

# Ե. ՈՒՐԲԱԹ. ԱԿ

### Պահոց

ՅԱՌԱՒՕՏՈՒ ՀԱՐՑ ԳԿ. Բանդ Աստուած որ։ 143։

---

# Ե. ՇԱԲԱԹ. ԲՋ

### Ս. Երկոտասանից եւ գլխաւոր առաքելոցն Պետրոսի եւ Պօղոսի

## Ի ԳԻՇԵՐԻ

### ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԴՁ

Ցընծայ այսօր եկեղեցի Աստուծոյ. յիշատակաւ սուրբ առաքելոցն. հաստատեալ ի վերայ վիմի հաւատոյ. զարդարեալ ի փառըս մարմնացելոյ Բանին։ Որ զէութիւն անճառելւոյ Միածնին. յայտնութեամբ Հօր ի վերուստ դաւանեաց. եւ երանականն արժանացեալ շնորհին վէմ անուանելի ի դրանց դըժոխոց։ Որ անմար-

մնոց դասուց հրեղինաց. հողեղէն բնութեամբ գերազանցեալ. և բարձրացեալ ի յերկնային խորանն անճառ բանին արժանաւորեալ ։

Որ գերագոյն ընտրելոց. առաքելոցն դասուց. անուանեցեր լինել զերանելին ըզՊետրոս. գլուխ սուրբ հաւատոյ հիմն եկեղեցւոյ ։ Որ յառաջագոյն կոչմամբ. առաքեցեր զանօթն ընտրութեան. յայտնելով աշխարհի զանճառ տնօրէնութեան քո խորհուրդ. յորջնաբանութիւն կոչել զհեթանոսս ։

ՀՐՇ. Անմահ արքային անմարմնոց աթոռք. բազմաչեալք քերովբէք սրբասաց ձայնիւ սրովբէք առաջին յերկինս ‖ քահանայապետութք. բարեխօս լերուք առ Տէր վասն եկեղեցւոյ ։ Բարձրելոյն փառաց բարձող տէրութիւնք. անպարտելի զօրութիւնք. վերնագոյն իշխանութիւնք. երկրորդին դասուց քահանայապետութք ։ Գերագոյն էին պետութիւնք վերին հրեշտակապետք երկնաւորք հրեշտակաց զինուորթիւնք երրորդի յերկինս քահանայապետութք. անհամար ձայնեալ երգեն ըզփառս ի բարձունս ։

ԴԻԹ. Օրհնեցէք ըզՏէր յօրհնութիւն ի նորքանզի ծագեաց մեզ եղջիւր փրկութեան ի տանէ Դաւթի կենցուցանել զմեզ կամեցաւ. ‖ Օրհնեցէք ըզՏէր յօրհնութիւն ի նոր ։ Գաւազան ծաղկեալ յարմատոյն Յեսսեայ. Դաւիթ մարգարէն. և ի նորին շառաւիղէ առաքեալըն Յակոբոս ականատեսն սպասաւոր Բանին Աստուծոյ. օրհնեցէք ։ Յեկեղեցիս օրհնեցէք ըզՏէր. որ երկրպագեմք ընտրելովք առաքելովքն Յակոբաւ և մարգարէիւքն Դաւթիւ հաստատեաց զհիմունս սուրբ եկեղեցւոյ. օրհնեցէք ։

Digitized by Google

ՑՈՎ. Այսօր ցընծան հրեշտակք ի յերկինս. յիշատակաւ հողանիւթ հրեշտակին որք համագամեալք ձայնին բարբառոյ երգեն զօրհնութիւնս Հօր ի բարձունս: Այսօր ցընծան հոգիք արդարոց. նահապետաց եւ մարգարէից ձայնակից լինել մեծին ի ծնունդս կանանց երգեն զօրհնութիւնս Որդւոյն միածնի: Այսօր ցընծան դասք առաքելոցն. տօնախմբելով զյիշատակ մեծի Մըկըրտչին. որ առաքելոցն է սկիզբն և մարգարէից լրումն. ընդ նոսին եւ մեք բըղխեցելոյն ի Հօրէ երգեմք ըզփառս ի բարձունս:

ԳՐԻ. Հրաշափառ Աստուած եւ միշտ բարերախնամող. որ յառաջ գիտութեամբ ըզփրկութիւն հայաստանեայց ըսկըզբնաւորեալ. ի պարթեւական մեղապարտ ազգէն լուսաւորիչ մեզ շնորհեցեր. վասն որոյ բարեխօսութեամբ սորա փրկիչ կեցո ըզմեզ. այժմ եւ ի քո յահաւոր գալըստեանն: Հրաշալի զարմացմամբ երանելին սուրբ Գրիգոր. զանտանելի ըզչարչարանս ի յանձն էառ. եւ երիւք հընգօք ամօք ի մէջ թունաւորացըն բնակէր. անդընդային տանջանօքն ի վիրապին. վասն: Հրաշագործ քո բանիւդ եւ մեծ ողորմութեամբդ. եղեալ բըժըշկէր ըզհարուածեալսն ի դիւաբախ սաստից. երկըրպագօղս առնելով զամենեսեան սուրբ Երրորդութեանդ. վասն:

ՀԳ. Կենդանարար Աստուած մարդասէր Հոգի. ըզժողովեալսըն միաբանական սիրով. լուսաւորեցեր հրեղէն նոր լեզուօք. վասն որոյ եւ մեք այսօր տօնեմք ըզգալուստ քո սուրբ: Զուարճացան քո զալըստեամբըն սուրբ առաքեալքն. կոչելով ի միասին ըզցըրուեալսն ի միմեանց բազմազան լեզուօք. վասն: Հոգեւորական սուրբ Մըկըրտու-

թեամբ. զարդարեցեր նոքօք ըզտէ եզերս ի զգեստ լուսափայլս եւ նորափետուրս. վասն որոյ եւ մեք այսօր տօնեմք ըզգալուստ քո սուրբ ։

ՀՆ. Որ հայրական իշխանութեամբ եւ փառօք զալոց ես Տէր նըստելոց եւս դատաւոր. հանդերձ ի քո առաքելովք ‖ եւ անձինս ըզհատուցումն քո արարածոց ։ Որ լուսափայլ ճառագայթիւք նըշանաւ սըրբոյ խաչին յահաւոր բեմին բազմիս. եւ ընտրես զօդիս յայծեաց և անձինս ։ Արդ աղաչեմք ըզքեզ Քրիստոս Որդի Աստուծոյ հանգո զմեր ննջեցեալսն. ի վերին Երուսաղեմ. զի մի դարձցի անանկ ամաչեցեալ. ի յաւուրն ահեղ ատենին ։

ՄԾ. Այսօր ժողովեալ սըրբոցն ի միասին. երանելի առաքեալքն եւ սուրբ կուսանքն. ջահազգեստ պայծառացեալ լուցանէին ըզլապտերս իւրեանց. ի միաձայնեալ ասէին. Օրհնեալ ես. ամէնօրհնեալդ ի կանայս ։ Այսօր գնելով ըզսուրբ կոյսն առ դրգերեզմանին. սպասէին և ակն ունէին Տեառն ի ինքնին գոլով. զեր ի վերոյ տեսեալ զարարիչն եկեալ բազում հրեշտակօք. եւ նոցա միա ։ Այսօր առեալ ըզսուրբ կոյսըն թռուցեալ յօդս. եւ ամպեղէկառօքն ի վեր համբարձեալ յերկինս. մըտանէր ի յերկնային խորանսն ընդ իմաստուն կուսանսն. ի նոցա ։ Այսօր ընդ բազմաչեայ քրովբէսն եւ ընդ վեցթեւեան սրովբէսն. մըտանելով յեօթնատեղեան խորանսն. տեսանելով զանճառն աթոռըն զոր պատրաստեալ է քեզ տէրունոյդ. երգեմք և մեք ասելով. Օրհնեալ ։

ԽՁ. Քրիստոս Աստուած մեր. շնորհեա մեզ ընդ Գեւորգի և ընդ որդւոցըն Զեբեթեայ. արժանաւորին

քոյում աստուածային տեսլեանդ ։ Համբարձցես ըզմեզ Տէր . առաւել քան ըզգալի զթաբօրական ըզլեառըն յերկնաբերձր եւ յիմանալի խորանսդ ։ — Փառք Հօր ։ Վասն որոյ և մեք ըզքանկտելիս մեր յարմարեսցուք քեզ հոգեւորական տաղաւար որպէս միայնոյ մարդասիրի եւ փրկչի ։

— Այժմ և միշտ ։ Որ երկոքումբք ընտրելովք . լուսաւորչաքն աշխարհի . հաստատեցեր զեկեղեցի քո Քրիստոսի . մաղթանօք սոցա խընայեա ի մեզ ։

---

## ՑԱՌԱՒՕՏՈՒ

### ՀԱՐՑ ԴՁ

Որ խոստացար տալ ըզփականս արքայութեանն երկնից . երանելոյն Պետրոսի որ հրաւիրեաց ըզմեզ ի յոյս կենացըն յաւիտենից . Աղաչանօք սորա կեցո զմեզ Տէր Աստուած հարցըն մերոց ։ Որ ընտրեցեր ի մարդկանէ հաւատարիմ սուրբ զառաքեալըն Պօղոս . ձրօշելով յաւետարանկըն լինել քեզ խոստովանող . աղաչանօք ։ Փակողն արքայութեանն երկնից սուրբ առաքեալըն Պետրոս . արութեամբ ժուժկալեալ քեզ խաչակցեցաւ . աղաչանօք ։

Գ. ԸզՏէր օրհնեցէք ‖ բարձր ամբարձէք յաղթողական ձայնիւ ըզքանկեալըն ի մէջ սրբոց ։ Որ ընտրեաց զերանելի առաքեալսն . ամենեքեան հաւատոյ սիւնք եկեղեցւոյ . ի տիեզերական ի հրապարակին զզաւորական աթոռսըն շնորհելով . բարձր ։ Նըմանեալ աղաւնոյ արծաթապատ թեւօքն ի գոյն ոսկւոյ ճըշմարիտ սուրբ Հոգին . եւ լուսազարդ փայլմամբ փարէր ըզնոսքօք . բարձր ։

ՄՆԾԱՑՈՒՍՑԷ ԴՁ . Աստուածածին գերագոյն երկ ։ 724 ։

## ՑԵՐԵԿՈՅԻՆ

ՀԱՄԲԱՐՁԻ ԴԿ ՍՏ.

Որ անպարագիրն էր յէութեան. պարածածկեալ
րփրափայլ ճառագայթիւք. լոյսն որ պայծառ
ան զարեգակն. արտափայլեալ շուրջանակի աթոռոյն
ոգւոյն. ‖ Հրաւիրելով ամ վ իւ լոյսն անըս-
ուեր: Որ գերագոյն քերովբէից. վերամբարձեալ
յերրակի խորանս երկնից. եւ հրաշոսան
ըստակացն արբմամբ զմայլեալ. Երրորդութեանն ար-
անաւորելով անեղեան ուրբըն Պօղոս. հրաւիր:
Որ անօթ հոգւոյն ըննտրեալ. քարոզելով զանունըն
եանն ի հեթանոս. եւ կատարեալ զընթացս-
ըն հաւատոյ. պըսակեցաւ հեզմամբ արեանն իւրոյ
Քրիստոսէ. ժառանգելով ըզկեանս
անվախճան:

---

# Զ. ԿԻՒՐԱԿԷ. ԲԿ

## ԶԿՆԻ ՊԵՆՏԵԿՈՍՏԷԻ



### ՑԱՒԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԱԿ

Որ վասն մերոյ փրկութեան իջեր: Իբր օրհնեն: 576:

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԱԿ. Նոր խորանիդ արեգականն: 566:

---

ՑԵՐԵԿՈՅԻ ՀԱՄԲ. ԲԿ. Ա. Քո յարութեանդ: 36:

---

Ցայս շաբաթու պահք ոչ լինին, չէ շաբաթապահք են:

# Զ. ԵՐԿՈՒՇԱԲԱԹԻ. ԳԶ

## Պահոց

ՑԱՒԱՒՕՏՈՒ ՀԱՐՑ ԱԶ. Բարեբանեալ ես: 197:

---

# Զ · ԵՐԵՔՇԱԲԱԹԻ · ԳԿ

Պահոց

ՑԱՌԱԻՕՏՈՒ ՀԱՐՑ ԱԿ. Զանուն քո գովեսցուք: 209:

# Զ · ՉՈՐԵՔՇԱԲԱԹԻ · ԴՁ

Պահոց

ՑԱՌԱԻՕՏՈՒ ՀԱՐՑ ԱԿ. Որ խոնարհեցար: 210:

# Զ · ՀԻՆԳՇԱԲԱԹԻ · ԴԿ

Պահոց

ՑԱՌԱԻՕՏՈՒ ՀԱՐՑ ԱԿ. Աստուած հարցն մերոց: 211

# Զ · ՈՒՐԲԱԹ · ԱՁ

Պահոց

ՑԱՌԱԻՕՏՈՒ ՀԱՐՑ ԴՁ. Որ փառօք Հօր հաւն: 146

# Զ · ՇԱԲԱԹ · ԱԿ

## Տօն Տապանակին Տեառն

### Ի ԳԻՇԵՐԻ

ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԱԿ

Ընդ քեզ քաղաք Աստուծոյ եւ տաճար անմատչական. աստուածազարդ եւ լուսազգեաց անվախճան փառաքըն պըսակեաց սուրբ Հոգին. եւ յաւէժ ուրախանան միշտ հաւատացեալք: Ի քեզ ծագեալ ի հանգոյիցն Աստուծոյ արդարութեան արեգակն. որ լուսաւորեալ փարատեաց ի քէն ըզխաւարն անգիտութեան եւ հաստատեաց ըզհիմունըս քո. ի վերայ հիման առաքելոց եւ մարգարէից: Ի քեզ կանգնեալ սեղան սրբութեան և բըղխեալ աղբիւր անապական. որ յորդառատ վըտակօք արբուցանէ յաւէտ ըզտենչօղսըն զեղեցկապէս բըղխեալ ըզբողբոջս անուշից. եւ յաւէժ ուրախանան միշտ հաւատացեալք:

✝ Ի վերայ վիմի հաւատոյ հիման առաքելոց եւ մարգարէից. շինեցեր ըզքո սուրբ զեկեղեցի և ի սմա միաձայնեալ եղեն մարդիկ ընդ հրեշտակս. փառաւորելով սուրբ զԵրրորդութիւնդ։ Տեղի ապաւինի և ժողովարան բանաւոր հօտի. բնակարան հրեշտակաց նաւահանգիստ արդարոց և մեղաւորաց քաւարան. զարդարեալ առաքելովք եւ մարգարէիւք։

ՑԱՐ. Այսօր նոր ժողովուրդք ընդ երկնայնոց լուսեղինացըն համաձայնեալք. նորոգողին ազգի մարդկան վեր երգեսցուք որ փառըն մեր մեռաւ եւ յարեաւ. ‖ ամենով փառաւորեալ է քո յարութիւնդ։ Այսօր որդիք Սիովնի ծընեալք աւազանին շնորհօք յորդիս Աստուծոյ. ի նաւակատիս տաճարի բնութեան մերոյ զովեցէք զփեսայն ելեալ յառագաստէ նոր զերեզմանին. ամենով։ Այսօր մանկունք հաւատոյ կատարելով զնաւակատիս վերինն Երուսաղեմի. նորոգեցէք ըզպատմուճան հոգւոց ձերոց. եւ ընդ որդւոց լուսոյ նոր Սիովնի. բարեբանեցէք զՔրիստոս թագաւորն. ամենով։

ԱՊ. Որ անմարմնոց հոգեղինաց դասակցեցեր Քրիստոս սուրբ զեկեղեցի. որք ընդ նոսին համաձայնեալ փառաւորեմք սուրբ զԵրրորդութիւնդ սրովբէական սըրբասացութեամբ. երգելով ‖ ըզփառս ի բարձունս։ Որ յաղթեցեր մերով բնութեամբ ի փորձութեան կամակոր օձին. որով ետուր իշխանութիւն որդւոց Ադամայ կոխել ըզգլուխ չար վիշապին. եւ ընդ երկնայնոցն երգել ըզփառս։ Որ գալըստեամբ քո վերածեր ըզմեզ յաշխարհական մեղաց ծովէս. տըպաւորեալ լըրմամբ ուռկանի վիմին հաւատոյ զոր ի ծովուն հրաշագործեցեր. երգեմք քեզ ըզփառս։

ՑԱՐ. Թագաւորեաց Աստուած ի վերայ հեթանոսաց. եւ լուսազարդեալ պայծառացելոյ սուրբ զեկեղեցի. Ժողովուրդք ընդ Քրիստոս բարեբանեցէք: Զգեցաւ Տէր զօրութիւն ընդ մէջ իւր ածաւ. քանզի ջնջեաց զխայթոց մահու խաչիւն իւրով սրբով. Ժողովուրդք: Ցարեաւ Աստուած եւ տիեզերք ամենայն նորափետուր զարդարեցան. եւ մանկունք հաղորդեցան մարմնոյ եւ արեան կենարարին. Ժողովուրդք:

ՄՆ. Որ նախիմաց իմաստութեամբ տնօրինեցեր զխորհուրդ սուրբ եկեղեցւոյ. խորագոյն արկեալ հիմունս հաստատութեան ընդդասս արդարոց. Աղաչանօք սոցա խնայեա ի մեզ: Որ զօրհնութիւն Նախաստեղծիցն աստուածազգեաց արուաց եւ իգաց. պայծառացեալ վայելչապէս ծաղկեցուցեր այսօր ի Ցովակիմ եւ յԱննա. Աղաչանօք: Որ ըղխոստումն Աբրահամու նահապետին մեր ըստ հոգւոյ. քահանայական եւ թագաւորական զաւազանացըն միացեալ ցուցեր առ ի յԱննայէ. Աղաչանօք:

ՀԳ. Որ յերկնայինն զօրս անմարմնոցըն նախ հեղեր առատապէս հոգիդ ճշմարիտ. զաստուածայինն եւ զգերագոյն քո իմաստութիւնդ լինել փառաբանիչ սուրբ Երրորդութեանդ. Ընդ նոսին փառաւորեմք զերրեակ միութիւնդ: Որ զկերպարանն աստուածային պատկերի Երրորդութեանդ խորհրդակցութեամբ. զարդարեցեր փչմամբ շնորհաց քոց կենդանարար. եւ ընդ ծնեալսն առ ի նմանէ խօսեցար օրինօք եւ մարգարէիւք. ընդ նոսին: Որ յերկրորդիլ լինելութեանս յայարութեան քում էակցին. մըտեալ ի վերնատունն դրօքըն փակելովք շնորհելով ըստ առաջին փչմանն ըղքեզ մետասանից առաքելոցն ասաց առէք հոգի սուրբ. ընդ նոսին:

Digitized by Google

Հն. Յորժամ յերկնից գոչէ փողն ազդեցութիւն ձայնելով տիեզերաց ի դատաստանն ահաւոր. յայնժամ աւուր յահեղին || յիշեա Տէր և ըզմեր ըզ-նջեցեալսն և հանգո ընդ սուրբըս քո։ Յորժամ ճառագայթք աստուածութեանըդ փայլեն ի յարեւելից. և գըպրութիւնք հրաշիւցըն բանին յայնմ աւուր յահեղ. յիշեա։ Զարհուրեալ դողան արարածք ի ձայնէ սոսկալագոչ փողոյն. յորժամ հարկանէ հրեշտակապետն և կոչէ ի դատաստանն զազգս որդւոց մարդկան. յայնմ աւուր յահեղին յիշեա։

Մծ. Նոր խորանիդ արեգականն արդարութեան նոր օրհնութիւնս տացուք. || և անդադար բարեբանեսցուք։ Նոր տաճարիդ անճառ լուսոյն որ ի Հօրէ նոր երգս երգեսցուք. և։ Զնոր խառնարանըդ հրաշալի նոր խառընման Բանին և մարմնոյ. հոգեւոր երգով բարեբանեսցուք։

Խջ. Սեղան քո Տէր զօրութեանց. հաւատով կանգնեցաւ ի խորանի քում եկայք ժողովուրդք երկրպագեսցուք։ Վէմ պատուական. ի խորանի քում հիմնեցաւ այսօր. || եկայք ժողովուրդք երկրպագեսցուք։

— Փառք Հօր։ Ի սմա մատուցաւ. ճշմարիտ պատարագ և զենումն անապական եկայք։

— Այժմ և միշտ։ Բանն Աստուած և ծածկեալ խորհուրդըն յաւիտենից. իջեալ ի յերկնից մարմնացեալ ի կուսէն խաչեալ յերկրի և. թաղեալ ի նոր ի դերեզմանի. և յարուցեալ յերրորդ աւուր զի զմարգարէիցն ըզգտառաւըն կատարեսցէ։

Ալէլուիա Ենէղէցայ է յայնէն ....։



Digitized by Google

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

### ՀԱՐՑ ԳՁ

Այսօր ցնծան զուարթք հրեշտակաց ի նաւակատի-
Քրիստոսի սուրբ եկեղեցւոյ. բարեբանելով ընդՏէր
Աստուած հայրցն մերոց: Այսօր ամենայն զուարթք սուրբ
առաքելոցն. ընդ որոց վերինն Երուսաղեմ. յիշատակի
տաճարին մատուցանեն զերգս հրեշտակաց երգով. Տէր:
Այսօր երգս նուագ զուարթք հաւատացելոց.
միաբանութեամբ արժանի արա ընդ մեզ ի տաճարի քում
սրբութեան փառաւորել զամենասուրբ զերրորդու-
թիւնդ. ընդՏէր:

Գ. ԸնդՏէր օրհնեցէք և առաւել բարձր արարէք
ընդ յաւիտեան: Որ լուսաւորեաց զկաթողիկէ մայր
սուրբ եկեղեցի աստուածային լուսովն. ամենայն ազգ-
ներք զովեցէք և առաւել: Որ բարձրացուցեր զմանկունս
սուրբ եկեղեցւոյ ի դասս վերին զօրացն. քահանայք
օրհնեցէք և առաւել:

### ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԳՁ

Զանճառելի լուսոյ մայր և բնակարան: 93:

### ՈՂՈՐՄԵԱ ԳՁ

Լուսաւորեա Երուսաղէմ զի հասեալ է լոյս քո. զար-
դարեա զամուրս քո. եւ փառք Տեառն ի վերայ քո
ծագեաց: Օրհներգութեամբ աղաղակեսցուք քեզ վայելէ
Աստուած օրհնութիւն ի Սիովն. եւ քեզ մատուցանեն
աղօթք յԵրուսաղէմ: Գովեա Երուսաղէմ ընդՏէր. եւ
օրհնեա զԱստուած քո. որ նոր ժողովուրդ դշխոյ դուս-
տըր Սիովնի:

### ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԳՁ

Այսօր աստուածութիւնն զուարճանայ նոր հաստա-
տելով զերկիր. պարք սուրբ փառաբանեն զէութիւնդ.

Եւ մեք ձայնիւ օրհնութեամբ զարդարեսցուք սուրբ ըզ-
տօնս ։ Այսօր եւ մեք ցընծամք տօնիւս ընդհանուր
հընչմամբ . մեծապէս փայլմամբ երեւեցաւ յաշխարհի . առ
Աստուած գոհութիւնք ընթանան պատմեն անդադար
զբան կենդանի ։ Խընդա և զուարճացիր եկեղեցի .
կոյս սուրբ և հարսն երկնաւոր փեսային . ահա տեսա-
նեմք զօծեալն ըզՔրիստոս գոլով առ քեզ լոյսըն հե-
թանոսաց ։

Առաւօտու Երգ . Արի Տէր ի հանգիստ քո, դու և տա-
պանակ կտակի սրբութեան քո ։

Յիշեա Տէր զԴաւիթ և զամենայն հեզութիւն նորա ։

Քարոզ Ասասցուք ։

ՄԱՆԿՈՒՆՔ ԱԿ

Որ ի սկըզբանէ իմաստութեամբ հաստատեցեր զեկե-
ղեցի Հօր իմաստութիւն . զոր նախանըկար տեսու-
թեամբ նըշանակեաց Մովսէս խորանաւն երկնահանգոյն
ի Սինա լերինն . լուսաւորեալ փառօքն Աստուծոյ ։ Որ
ըզխորհուրդ անապական տնօրէնութեանըդ քո ի սըր-
բոյ կուսէն . տըպաւորեալ տապանակն աստուածային
ուխտի կտակարանաց Բանիդ Աստուծոյ . փառաց անե-
ղին տեղի հանգըստեան ։ Որ ի կեանըս վերադար-
ձի բնութեանս դարձմամբն Յորդանանու օրինակեցեր .
և ըզբըղխումն մահու և դըժոխոց կործանմամբն
Երիքովի տապանակաւ . խաչին հրաշագործեալ նոր իւ-
րայելի . օրհնութիւն քեզ Տէր երգեսցեն մանկունք ։

Ձնք Քար . Սուրբ եկ ։ կեցո . Յայնժ— ։ Աղ . Առ դրան սուրբ ։

---

ՅԵՐԵԿՈՅԻ

Մեսեդի Եկեղեցւոյ ։ Քարոզ Ասասցուք ։

Եւ զքենամ մեղան և յարեան եկանեն խաչի և ամենայնա-
նա, յենեօ և մաղեղինօ և ամեն

ՀԱՄԲԱՐՁԻ ԱՁ

Որ ի լերինն այլակերպեալ ցուցեր. ի ճոխ:

Ձայն Քող. Խնդրեսցուք: Կեցո. Յոյնժ: Աշխ. Թագաւոր:

# Է. ԿԻՐԱԿԷ. ԲՁ

## ԶԿՆԻ ՊԵՆՏԵԿՈՍՏԷԻ

# ՎԱՐԴԱՎԱՌ

## Ի ԳԻՇԵՐԻ

### ՀՆՑՆԻԱԳ ՇԱՐԱԿԱՆ ԴՁ

Ցնծայ այսօր փառօք Միածնին. լեառն Թաբօր հանդերձ Հերմոնիւ եւ բարձրացեալ գերագոյն Սինայ. եւ էջք Աստուծոյ դուռն երկնից ի նմա: Ցնծան այսօր լերինք Աստուծոյ. արարողին եղեալք ընդ առաջ. պարակցեն յաւիտենական լերանցն. ընդ առաքելոց եւ մարգարէից: Ցնծայ այսօր լեառն վերին Սիոնի. հարսնարան անմահ արքայինն. տեսանելով զերկնաւոր փեսայն. զարդարեալ լուսով հայրական փառօք:

Քող. Եւ նա խաղ: Քահ. Օրհ: Եւ [illegible]
[illegible]

### ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԱՁ

Որ ի լերինն այլակերպեալ. ցուցեր զաստուածային քո զօրութիւնդ. Զքեզ փառաւորեմք ճշմարիտ լոյս: Որ ըղձառոգայթ փառաց քոց ցուցեր. արեգակնակերպ փայլմամբ զարարածս լուսաւորեցեր. զքեզ: Որ ահագին տեսլեամբ զարհուրեցուցեր զքո զաշակերտսն. ի թմբրութեան հրաշիցն ի սէր աստուածային փառաց քոց. զքեզ:

† Երեւի երրեակն աշակերտացն հրաշալի տեսլեամբ. պայծառացեալ ի Թաբօր լերինն: Եւ զերրեակն մա-

Digitized by Google

թեան զանատանելի ըզլոյսն տեսանելով. կենդանութեան մահացուն. Հանդերձեալ նախահարցըն տեսութեամբ. հայցէին ի Տեառնէ ասեն բարւոք է մեզ աստ լինել:

Ի տաճարի սրբութեան փառաց քոց Քրիստոս զոր ի յերկնից լուսաւորեցեր աստուածային ծագմամբ. ի նմա ըզքեզ անդադար բարեբանեսցուք: Որ ըզխորհուրդըս փրկականս աստուածգիտութեան. շնորհեցեր մեզ ի ձեռըն քահանայապետին քո և վըկային. Նորին աղաչանօք խընայեա ի մեզ: Զհաւատացեալ ժողովուրդըս սուրբ Երրորդութեանդ. և զապաւինեալս ի խորան փառաց քոց. պահեա անխըռով ի խաղաղութեան:

Այսօր զանըսկիզբըն Բանն որ յաթոռ փառաց ընդ Հօր յերկրի երևեալ տեսաք. քրովբէական ձայնիւ օրհնեսցուք ‖ օրհնեալ եկեալ անուամբ Տեառն: Այսօր յաւանակ քերովբէ և տըղայք եբրայեցւոց բարեբանեն. օրհնութիւն որդւոյ Դաւթի. օրհնեալ: Այսօր զուարճացան տիեզերըք զալըստեամբ Աստուածորդւոյն յԵրուսաղէմ. և գոչէին հընչմամբ երգով. օրհնեալ եկեալ անուամբ Տեառն:

ՑԱՐ. Զթագաւորըն փառաց Քրիստոս որ վասըն մեր մարմնացաւ ի սրբոյ կուսէն խաչի համբերելով. ‖ միաբանութեամբ երգով բարեբանեսցուք: Որ ըզթաղումն երեքօրեայ յանձն էառ. յարուցեալ ի մեռելոց իշխանութեամբ. միա: Կարողապէս ըզդրունըս դըժոխոց խորտակեաց. եկեղեցւոյ իւրում զգեցոյց զմեծ վայելչութիւն. միա:

Զփառաւորեալըն յամենայն արարածոց. և ի ծագաց մինչ ի ծագս երկրի զերկըրպագեալն. զմարմնացեալ Բանն ի կուսէն ձայնիւ երգով օրհնեսցուք: Որ դի-

մեալ գալ յԵդովմայ բարձրացեալ փողով · յարուցեալ ի պատերազմ ընկղմեաց զանօրէնութիւն Ամաղէկ · զի-ջեալ Բանն ի դըժոխս ‖ Ձայնիւ երգով օրհնեսցուք ։ Ծագումն ի Հօրէ փառակից սուրբ Հոգւոյն կենդանա-թիւն ազգի մարդկան որ յարեան այսօր ի մեռելոց · զհամբարձեալ Բանն ի յերկինս ձայնիւ ։

Ուրախ լեր յոյժ դուստր Սիոնի · պայծառացիր Երուսաղէմ զարդարեալ ըզդրունըս քո քաղաքդ Աստուծոյ ։ Քանզի Քրիստոս որ էն ի յաթոռ փառաց · այսօր մըտանէ ի քեզ նըստեալ ի վերայ յաւանակի նորոյ ։ Մերք եւ տղայք ոստովք ձիթենեօք · միաբա-նութեամբ երգէին օրհնութիւն որդւոյ Դաւթի օրհնեալ եկեալ անուամբ Տեառն ։

Հգ · Որ ի քրովբէական կառսըդ հանգչիս · այսօր ի-ջեր յերկնից ի դաս առաքելոցըն սուրբ Հոգի · ‖ Օր-հնեալ ես Թագաւոր անմահ ։ Որ գընաս ի վերայ թեւոց հողմոց · այսօր ի հրեղէն լեզուս բաժանեալ հանգեր յառաքեալսըն սուրբ Հոգի · օրհնեալ ։ Որ խնամես ան-չութեամբ զքո զարարածս · այսօր եկիր ի հաստատել զեկեղեցի քո սուրբ Հոգի · օրհնեալ ես Թագաւոր անմահ ։

Հն · Զայն արկեալ կենարարին աստուածային բար-բառոյն · ասէ եկայք օրհնեալք Հօր իմոյ ժառանգեցէք · պատրաստեալ ձեզ ըզկեանսն ի հանդերձեալ երկրին ։ Ընդ առաջ ելանել քեզ հաւատով ի յօդըս վերին · աստուածազգեաց լուսով պայծառացեալ ի դասս ան-մարմնոցն · Եւ լըսել ըզձայն երանաւէտ կոչման նն ։ Ընդ աջմէ քումմէ կացո ընդ իմաստունս սուրբ կուսանսն · Եւ լուսեղէն առագաստին պայծառացեալ ի դասս անմար-մնոցն · Եւ ժողովս անդրանկաց գրելոց Եւ յերկինս ։

ՄԾ․ Մարմնացեալդ ի կուսէն նախայաւիտեան բանդ․ այսօր ի տաճարն եկիր կատարել զօրէնս․ վասն փրկութեան հեթանոսաց։ Որ յանձրուեմտ աթոռ նստիս բարեբանեալդ ի հրեշտակաց․ այսօր ի Սիմէոնէ բառնալով ի գիրկս․ որ ընծայեսցես ըզմեզ ի կեանսդ յաւիտենից։ — Փառք Հօր։ Որ արձակիչդ ես կապելոց պարգեւատու ամենեցուն․ այսօր հայցմամբ ծերունոյն արձակեա և զիս ըզբազմամեղս ի կապանաց մահու ի կեանսդ յաւիտենից։

— Այժմ և միշտ։ Արասցուք երիս տաղաւարըս Տեառն եւ Մովսէսի և Եղիայի․ եւ փառաւորեսցուք հանապազ զերրեակ միութիւնն։

---

ՅԱՌԱՒՕՏՈՒ

∻ԱՐՑ ԱԿ

Զանճառելի խորհուրդ սուրբ Երրորդութեանդ․ այսօր ի լերինն երեւեցուցեր աշակերտաց քոց Տէր․ ‖ Աստուած հարցըն մերոց։ Սոսկալի հիացմամբ զայլակերպութիւն քո Տէր․ այսօր տեսեալ առաքելոցըն յօրինէին քեզ տաղաւար․ Աստուած։ Հովանացեալ ի վերայ լուսեղէն ամպոյն․ եւ ձայն ի յերկնից հայրական որ ասէ դա է Որդի իմ սիրելի․ Աստուած։

Գ․ ԸզՏէր օրհնեցէք ‖ եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան։ Գովեցէք զարփիական ըզլոյսն երեւեալ ի Թաբօր լերինն․ եւ բարձր։ Բարեբանեցէք զաստուածութեանն երեւումըն աշակերտացն յայտնեալ․ եւ բարձր։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԱԿ

Զանճառելի զլոյս աստուածութեանն․ տնօրինա։ 213։

ՈՂՈՐՄԵԱ ԴՁ

°Ի՛ Թաբօր ի լերին ձեւացուցեր ըզքո բնութիւնդ

Digitized by Google

անուանելի գոյացութեամբ | ընդ որս և մեք ցընծու-
թեամբ երգեմք քեզ ողորմեա մեզ մարդասէր ։ Այ-
կերպարք հիացեալ · բարբառէին ըզխորհրդուրդս ի սու-
նուագել սըրբոց ճերեանց ընդ ։ Աքանչելի մեծ խոր-
հուրդ զնորոգութեանըդ քոց սըրբոց տաճարելոցն ծա-
նուցեր բարերար · ընդ ։ Անակալի հրաշամամբ զայլա-
կերպութիւն քո Տէր · առաքելոցն տեսեալ յօրինէին
քեզ տաղաւար · ընդ ։ Համանացեալ անմեղ լուսեղէն ·
եւ ըզհայրականն լուեալ ըզձայն եթէ դա է Որդի
իմ սիրելի · ընդ ։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԴՁ

Ա · Քրիստոս Աստուած մեր · շնորհեա մեզ ընդ Պետրոսի և ընդ որդւոցըն Զեբեդեայ · արժանաւորել քում աստուածային տեսլեանդ ։ Համբարձցես ըզմեզ Տէր · առաւել քան ըզգալի զթաբօրական ըզլեառն յերկնաբերձն եւ յիմանալի խորանսդ ։ Վասն որոյ մեք ըզքանկտելիս մեր յարմարեսցուք քեզ հոգեւորական տաղաւար որպէս միայնոյ մարդասիրի եւ փրկչի ։

Բ · Այսօր ըզխորհուրդ քո կերկնակի գալըստեանն աշակերտաց քոց յայտնեցեր Քրիստոս ի Թաբօր լերինն ։ Այսօր ըզփրկական քո վասն աշխարհի ըզմա-վըկայեալ · քեզ երեւեցան Մովսէս եւ Եղիա ։ Արբեալ Տէր զմեղուցեալ քո ծառայիցս ըզգայարանս եւ շնորհեա տեսանել ըզքեզ և լսել ըզհայրական ըզձայնն · եթէ դա է Որդի իմ սիրելի ։

Առաւօտու Երգ · Քո են երկինք ։ Զհիւսիս և զհարաւ ։
Քարոզ Ասասցուք ։

Ի– աղո Ելանէն ի տուրս Ն– ոսէն

ՇԱՐԱԿԱՆ ԱՁ

Որ ի լերինն այլակերպեալ ցուցեր ։ Երգ+ տոն ։ 900 ։

## ԱՊԱ ՍԱՂՄՈՍ ՂԷ. Է ԲԷ

կց. Լերինք ցնծասցեն։ փխ. Օրհնեցէք զՏէր։ 315։

Ընթերցուած յԱռակաց։ ԺԱ. 9։

Ուրախ լեր երիտասարդ ի մանկութեան քում, և զուարճացուսցէ զքեզ սիրտ քո յաւուրս մանկութեան քո։ Եւ գնա դու ի ճանապարհս սրտի քոյ անբիծ, և ի տեսիլ աչաց քոց. և գիտասցես թէ վասն այսր ամենայնի ածցէ զքեզ Աստուած ի դատաստան։ Եւ ի բաց արա զսրտմտութիւն ի սրտէ քումմէ, և անցո զչարութիւն ի մարմնոյ քումմէ. զի մանկութիւն և անմտութիւն ընդունայնութիւն է։ Եւ յիշեա դու զայն որ հաստատեացն զքեզ՝ յաւուրս մանկութեան քոյ, մինչ չև հասեալ իցեն աւուրք չարութեան, և հասցեն ամք՝ յորս ասասցես, ոչ են կամք իմ ի դոսա։ Մինչ չև խաւարեալ իցէ արեգակն և լոյս և լուսին և աստեղք, և դարձցին ամպք զկնի անձրևաց։ Յաւուր յորում շարժեսցին պահապանք տանն, և թիւրեսցին արք զօրութեան, և դատարկասցին աղօրիք զի նուազեցան, և խաւարեսցին որք տեսանեն ընդ ծակս։ Եւ փակեսցեն զդրունս ի հրապարակս ի տկարութենէ ձայնի աղօրւոյն, և յարիցեն ի ձայն հաւուն, և նկուն լիցին դըստերք երգոց։ Եւ ի բարձունս հայեսցին, և ապշութիւն ի ճանապարհին. և ծաղկեսցի նշին, և թանձրասցի մարախն, և տարածեսցի կապարն. զի գնաց մարդ ի տուն իւր յաւիտենից, և շուրջ եղեն կոծողք ի հրապարակս։ Մինչ չև կործանեալ իցէ լար արծաթոյն, և խորտակեալ մանեակ ոսկւոյն, և մանրեալ սափորն յաղբիւրն, և ընկըրկեալ անիւն ի գուբն։ Եւ դարձցի հողն յերկիր որպէս և էրն, և հոգին դարձցի առ Աստուած որ ետ զնա։ ԺԲ. 7։

Ընթերցուած յԵսայեայ մարգարէէ։ ԼԳ. 20։

Ահաւասիկ Սիովն քաղաք փրկութեան մերոյ. աչք ձեր տեսցեն զԵրուսաղէմ քաղաք մեծացեալ, խորանք որ ոչ շարժեսցին. և մի՛ շարժեսցին ցիցք խորանի նորա յաւիտեանս ժամանակաց, և մի՛ խզեսցին ապաւանդակք նորա. զի անուն Տեառն մեծ է ի ձեզ։ Ձեզ լիցի տեղին յորում գետքն և ջրադարձք լայնք և ընդարձակք. ոչ երթիցես ընդ այն ճանապարհ, և մի՛ գնասցեն նաւք քո վարեալք. զի Աստուած իմ մեծ է, և ոչ արասցէ զանց

Digitized by Google

զինև: Տէր հայր մեր, Տէր դատաւոր մեր, Տէր իշխան մեր, Տէր թագաւոր մեր, Տէր փրկիչ մեր՝ և նա փրկեսցէ զմեզ: 22:

Պետրոսի առաքելոյն ի կաթուղիկեայց երկրորդ
թղթոյն է ընթերցուածս: Ա. 12:

Որով պատրաստ լիցեմ միշտ ձեզ յիշեցուցանել վասն սոցին, առաւել ևս գիտակացն և հաստատելոցն եկեալ հասեալ ճշմարտութեանն: Քանզի իրաւունս համարիմ մինչդեռ եմ ի մարմնի աստ՝ զարթուցանել զձեզ յիշատակօք: Գիտեմ թէ վաղվաղակի է լինելոց մերկանալ յինէն մարմնոյս, որպէս և Տէր մեր Յիսուս Քրիստոս ցոյց ինձ. և փութամ ճեպիմ միշտ զձեզ յորդորել, զի և յետ իմոյ ելանելոյ յաշխարհէս՝ առնիցէք զյիշատակ այսոցիկ: Քանզի ոչ եթէ պաճուճեալ ինչ առասպելաց զհետ երթեալ ցուցաք ձեզ զՏեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի զզօրութիւն և զգալուստն, այլ մեզէն եղեալ ականատեսք Նորա մեծութեանն: Քանզի առեալ յԱստուծոյ Հօրէ զփառս և զպատիւ՝ յեկեալ յայնպիսի բարբառոյ ի մեծվայելչութեան փառաց անտի, եթէ դա է Որդի իմ սիրելի ընդ որ հաճեցայ: Եւ զայս բարբառ մեք իսկ լուաք եկեալ յերկնից՝ որ ընդ Նմա իսկ էաք ի սուրբ լերինն: Եւ ունիմք հաստատագոյն զբանն մարգարէական, որում եթէ անսայցէք՝ բարւոք առնէք. իբրև ճրագի որ տայցէ լոյս ի խաւարչտին տեղւոջ, մինչև տիւն լուսաւորեսցէ, և արուսեակն ծագեսցէ ի սիրտս ձեր: 19:

Զայնէ Ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա.

Բարձրութիւնք լերանց Նորա են, Նորա է ծով և Նա արար զնա, և զցամաք ձեռք Նորա ստեղծին:

Ալէլուիա, Օրթի

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մարկոսի: Ը. 27:

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ ել (Յիսուս) աշակերտօքն հանդերձ ի շէնս: 690

Սարկաւագն ասէ. Եւ ևս խաղ. Վասն ի վերուստ: Ե[illegible] [illegible] և [illegible]: Զինի [illegible]. Սուրբ խաչիւ: Աշ. Պահպանեա: Եւ է [illegible]. Նո.

ստեղծեալ ։ Քար. Խնդրեսցուք ։ Կեցո. Յայնժ ։ Աղ. Քում ամենազօր և հրաշալի պայծառակերպութեանդ ։

---

## ՅԵՐԵԿՈՅԻՆ

Ի փոխն ժամն ժողովքն է դասուն եկեղեցւոյն, և ասեն Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս, ամէն. Հայր մեր ։

ՍԱՂՄՈՍ ՂԷ. է Բէ

ԿՑ. Լերինք ցնծասցեն ։ Փխ. Օրհնեցէք զՏէր ։ 315 ։
Գիրք շարականին էջը ։ 905 ։

Զայնժ Ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա.

Քո են երկինք և քո է երկիր, զաշխարհ լրիւ իւրով դու հաստատեցեր ։

Ալէլուիա, Օրթի

Սրբոյ Աւետարանին որ ըստ Մատթէոսի ։ ԺԷ. 14 ։

Առ Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ իբրև եկին ի ժողովուրդն, մատեաւ այր մի ի ծունր իջանէր և ասէր. Տէր, ողորմեաց որդւոյ իմում, զի լուսնոտի և չարաչար հիւանդանայ. բազում անգամ անկանի ի հուր, և երբեք ի ջուր. և մատուցի զնա ա-ակերտացն քոց, և ոչ կարացին բժշկել ։ Պատասխանի ետ Յիսուս և ասէ. ո՜վ ազգ անհաւատ և թիւր, մինչև յե՞րբ իցեմ ընդ ձեզ, մինչև յե՞րբ անսայցեմ ձեզ. ած զնա աստ ինձ ։ Եւ սաստեաց ի նա Յիսուս, և ել ի նմանէ դևն, և բժշկեցաւ մանուկն ի ժամէն յայնմանէ ։ Յայնժամ մատեան աշակերտքն առանձինն և ասեն ցՅի-սուս. մեք ընդէ՞ր ոչ կարացաք հանել զնա ։ Եւ նա ա-ասէ ցնոսա. վասն թերահաւատութեան ձերոյ. ամէն ա-սեմ ձեզ, եթէ ունիցիք հաւատս քան զհատ մանանխոյ, ասասջիք լերինս այսմիկ՝ փոխեաց աստի անդր, և փո-խեսցի. և ոչ ինչ անհնարին լինիցի ձեզ ։ Բայց այս ազգ ոչ իւիք ելանէ՝ եթէ ոչ աղօթիւք և պահովք ։ 20 ։

Եւ ապա ելանեն խաչիւ և աւետարանաւ և ամենայն շարականաւ դարձ, ասելով

ՇԱՐԱԿԱՆ ԱՋ

Որ ի լերինն այլակերպեալ ցուցեր ։ Երբէ տուն ։ 900 ։

Digitized by Google

## Օրհնութիւն

**Սրբոյ Աւետարանին որ ըստ Մարկոսի : Ը. 39:**

**Տէրն մեր Յիսուս Քրիստոս**

Եւ ասէ ցնոսա. ամէն ասեմ ձեզ, զի են ոմանք ի սոցանէ որ աստ կան, որք մի՛ ճաշակեսցեն զմահ մինչեւ տեսցեն զարքայութիւն Աստուծոյ եկեալ զօրութեամբ: Եւ յետ վեց աւուր առնու ընդ իւր Յիսուս զՊետրոս եւ զՅակոբոս եւ զՅովհաննէս, եւ հանէ զնոսա ի լեառն մի բարձր առանձինն. եւ յայլակերպս եղեւ առաջի նոցա: Եւ ձորձք նորա եղեն փայլուն սպիտակ յոյժ, որպէս թափիչք երկրի ոչ կարեն այնպէս սպիտակացուցանել: Եւ երեւեցաւ նոցա Եղիա Մովսիսիւ հանդերձ, եւ խօսէին ընդ Յիսուսի: Պատասխանի ետ Պետրոս եւ ասէ ցՅիսուս. ռաբբի, բարւոք է մեզ աստ լինել. եւ արասցուք երիս տաղաւարս՝ մի քեզ, եւ մի Մովսիսի, եւ մի Եղիայի: Քանզի ոչ գիտէր զինչ խօսէր, զի զարհուրեալ էին: Եւ եղեւ ամպ մի հովանի ի վերայ նոցա, ձայն եղեւ յամպոյ անտի՝ եւ ասէ. դա է Որդի իմ սիրելի, դմա լուարուք: Եւ յանկարծակի հայեցեալ այսր անդր, ոչ եւս զոք ա[illegible] տեսին, բայց միայն զՅիսուս ընդ իւրեանս: Եւ մինչ իջանէին ի լեռնէ անտի, պատուիրեաց նոցա զի մի ումեք պատմեսցեն զոր տեսինն, բայց յորժամ Որդի մարդոյ ի մեռելոց յարիցէ: Եւ նոքա զբանն ի մտի ունէին, եւ խնդրէին ընդ միմեանս՝ թէ զինչ իցէ ի մեռելոցն յառնել: Հարցին զնա եւ ասեն. զի՞նչ է այն զոր դպիրքն ասեն եթէ նախ Եղիայի պարտ է գալ: Նա պատասխանի ետ նոցա եւ ասէ. Եղիա նախ եկեալ յարդարեսցէ զամենայն. Իսկ զիա՞րդ գրեալ է զորդւոյ մարդոյ, զի բազում ինչ չարչարեսցի եւ անգոսնեսցի: Այլ ես ասեմ ձեզ, եթէ եւ Եղիա եկն, եւ արարին ընդ նա զինչ եւ կամեցան, որպէս եւ գրեալ է վասն նորա: Թ. 12:

ՇԱՐԱԿԱՆ ԴՁ

Ի Թաբօր ի լերինն ձեւացուցեր զքո բնութիւնդ : 903

## Օրհնութիւն

**Սրբոյ Աւետարանին որ ըստ Յովհաննու: Է. 1:**

**Տէրն մեր Յիսուս Քրիստոս**

Եւ յետ այսորիկ շրջէր (Յիսուս) ի Գալիլեա, քանզի

յամէր ի Հրէաստանի շրջել, զի խնդրէին զնա Հրեայքն
սպանանել: Եւ էր մերձ տօնն Հրէից տաղաւարահարաց:
Ասեն ցնա եղբարքն նորա. գնա աստի և երթ ի Հրէ-
աստան, զի և աշակերտքն քո տեսցեն զգործսդ քո զոր
գործես. զի ոչ ոք է որ ի ծածուկ ինչ գործէ, և խնդրէ
ինքն համարձակ լինել. եթէ զայդ գործես, յայտնեա
զանձն քո աշխարհի: Քանզի և եղբարքն իսկ չէին հաւա-
տացեալ ի նա: Ասէ ցնոսա Յիսուս. ժամանակ իմ չև է
հասեալ. բայց ձեր ժամանակ յամենայն ժամու պատրաստ
է: Ոչ կարէ աշխարհ ատել զձեզ, բայց զիս ատեայ.
զի ես վկայեմ վասն նորա՝ եթէ գործքն իւր չարութեան
են: Դուք երթայք ի տօնն յայն, ես ոչ երթամ ի տօնն
յայն. զի իմ ժամանակ չև է լցեալ: Զայս իբրև ասաց,
ինքն մնաց անդէն ի Գալիլեա. իբրև ելին եղբարքն նո-
րա, ապա և ինքն ել ի տօնն՝ ոչ յայտնի, այլ իբրև ի
ծածուկ: Եւ Հրեայքն խնդրէին զնա ի տօնի անդ և ա-
սէին. ո՞ւր իցէ նա: Եւ քրթմնջիւն էր զնմանէ ի ժողո-
վուրդսն. կէսքն ասէին՝ թէ բարւոք է, այլք ասէին՝ ոչ,
այլ մոլորեցուցանէ զժողովուրդն: Եւ ոչ ոք համարձակ
խօսէր զնմանէ վասն երկիւղին Հրէից: 13:

Քարոզ Եւ. ևս խաղաղութեան. Վասն ի վերուստ:
Եւ փառաւորեսցուք զամենակալն և զհայր կողմն աշխարհի:
Զկնի Քարոզ Սուրբ խաչիւ: Աղօթք. Պահպանեա զմեզ:
Եւ ի տաւնային Սարկաւագն քարոզէ. Եւ ևս խաղաղու:
Քահանայն Օրհնութիւն և փառք:
Եւ սկսանին զերեկոյի ժամն և ասեն Խոնարհեցո և Ապրեցո:
Մեսեդի Յարութեան. ԲՁ. Տէր թագ: Քարոզ Ասասցուք:

ՀԱՄԲԱՐՁԻ ԴԿ

Այսօր ի լերինն Թաբօր. ցուցեր ընտրելոց
քոց ի փառաց քոց Որդի Աստուծոյ. Օրհնեմք
զքեզ ի փառս Հօր. որ ես Տէր կենդանեաց և
մեռելոց: Այսօր յայտնեցար առաքելոցն. ի խօսել ընդ
Մովսէսի և Եղիայի վասն ելիցն քոց յԵրուսաղէմ.
Որդի Աստուծոյ. օրհ: Այսօր և բարբառ ի վե-
րուստ. յԱստուծոյ Հօրէ վասն քո հնչեաց յա-
ռաքելոցն. ասէ դա է իմ Որդի դմա լուարուք. օրհ-
նեմք:

Ձնէ Քարոզ Վասն խաղաղ։ Աղօթ Հայր գթած։

Առ. ՍԱՂՄՈՍ ԻԲ. է Ռէ

Տէր հովուեսցէ զիս և ինձ ինչ ոչ պակասեսցէ։ 815։

ԸՆԹԵՐՑՈՒԱԾ ՅԵԼԻՑ։ ԻԴ. 12։

Եւ ասէ Տէր ցՄովսէս. ել առ իս ի լեռանն, և անդ
լինիջիր. և տաց քեզ տախտակս քարեղէնս և օրէնս և
պատուիրանս զորս գրեցի, լինել նոցա օրէնսդիր։ Յա.
րեաւ Մովսէս և Յեսու պաշտօնեայ նորա, և ելին ի
լեռանն Աստուծոյ. և ասէ ցծերսն. դադարեցէք այդ
մինչև դարձցուք առ ձեզ. և ահա Ահարոն և Ովր ընդ
ձեզ են. և եթէ ուրուք դատաստան ինչ լինիցի, երթի.
ցեն առ նոսա։ Եւ ել Մովսէս ի լեռանն, և ծածկեա
ամպն զլեռանն. և իջին փառքն Աստուծոյ ի լեռանն Սի.
նա. և ծածկեաց զնա ամպն զվեց օր։ Եւ կոչեաց Տէ
զՄովսէս յաւուրն եօթներորդի ի միջոյ ամպոյն. և տե.
սիլ փառացն Տեառն իբրև զհուր բորբոքեալ ի վերա
գլխոյ լերինն՝ յանդիման որդւոցն Իսրայելի։ Եւ եմուտ
Մովսէս ի մէջ ամպոյն, և ել ի լեռանն. և էր Մովսէ
ի լերին անդ զքառասուն տիւ և զքառասուն գիշեր։ 1

ԸՆԹԵՐՑՈՒԱԾ ՅԵՐՐՈՐԴ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԵԱՆՑ։ ԺԹ. 11։

Եւ ասէ Տէր ցԵղիա. ելցես դու վաղիւ և կացցես ի լեռ
անդ առաջի Տեառն. և ահա Տէր անցցէ, և հողմ մեծ ա.
գին՝ որ զլերինս քակիցէ և զվէմս խորտակիցէ առաջի
Տեառն, և ոչ ի հողմն Տէր. և յետ հողմոյն շարժումն, և ոչ
ի շարժմանն Տէր. և յետ շարժմանն հուր, և ոչ ի հուր
Տէր. և յետ հրոյն ձայն մեղմոյ օդոյ, և անդ Տէր։ Ե
եղև իբրև լուաւ Եղիա՝ ծածկեաց զերեսս իւր մաշկե.
կաւն, և ել և եկաց ի ներքոյ այրին. և ահա բարբառ
առ նա և ասէ. զի՞ ես դու աստ Եղիա։ Եւ ասէ Եղիա
Նախանձեցայ զնախանձ Տեառն ամենակալի, զի թող
զուխտ քո որդիքն Իսրայելի, զսեղանս քո քակեցին,
զմարգարէս քո կոտորեցին սրով. ես միայն մնացեալ եմ
և խնդրեն զանձն իմ առնուլ զնա։ Եւ ասէ ցնա Տէր. գն
և դարձիր զճանապարհ քո, և երթիցես զճանապարհ ա
նապատին Դամասկեայ, և երթիցես և օծցես զԱզայէլ
թագաւոր Ասորւոց, և զՅէու որդին Ամեսսեայ ի թագա.
ւոր ի վերայ Իսրայելի. և զԵղիսէէ որդի Սափատայ յԱ
բելմաուլայ՝ օծցես ի մարգարէ փոխանակ քո։ 16։

Ընթերցուած յԵսայեայ մարգարէէ: Խ. 9:

Ել ի վերայ լերինդ բարձու՝ աւետարանիչդ։ 368։

Պօղոսի առաքելոյն յԵբրայեցւոց թղթոյն է ընթեր-ցուածս: ԺԲ. 18:

Զի ոչ էք մատուցեալ առ լեառն շօշափելի, որ հրովն առեալ էր և միգով և մառախղով և խաւարաւ և մթով, ւր փողն հնչէր և բարբառ պատգամացն. ուստի որք ուանն՝ հրաժարեցին, զի մի՛ կրկնեսցի առ նոսա բանն. անզի ոչ հանդարտէին հրամանին. Թէպէտ և գազան երձենայր ի լեառնն՝ քարկոծ լինէր. և այնպէս ահագին ր տեսիլն, զի և Մովսէս ասէր, Թէ զահի հարեալ եմ և ողամ։ Այլ մատուցեալ էք ի Սիովն լեառն, և ի քաղաք ստուծոյ կենդանւոյ յԵրուսաղէմ՝ յերկինս, և ի բիւրաւոր անակս հրեշտակաց, և յեկեղեցիս անդրանկաց գրելոց երկինս, և առ դատաւորն ամենեցուն Աստուած, և յոգիս րդարոց կատարելոց, և ի Նորոց կտակարանաց միջնորդն իսուս, և ի հեղումն արեան Նորա՝ որ առաւել խօսի քան ւհաբելին։ Զգոյշ լերուք՝ գուցէ հրաժարիցէք յայնմանէ ր խօսեցաւն. զի եթէ նոքա ոչ կարացին զերծանել րաժարեալք յայնմանէ՝ որ յերկրին հրաման տայր, ո՞ր-ափ ևս առաւել մեք՝ եթէ յերկնաւորէն թիկունս դարձու-անիցեմք։ Որոյ ձայնն զերկիր շարժեաց յայնժամ, և յժմ խոստացեալ է և ասէ. միւսանգամ շարժեցից ոչ իայն զերկիր՝ այլ և զերկինս։ Այլ միւսանգամն յայտ առ-է զշարժելոցն՝ իբրև զեղելոց փոփոխումն, զի հաստա-ուն կացցեն անշարժքն ։ 27 ։

Ձայնի– Ալէլուիա . ալէլուիա . ալէլուիա .

Քո են երկինք և քո է երկիր, զաշխարհ լրիւ իւրով դու աստատեցեր։

Ալէլուիա, Օրթի

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու ։ Թ. 18 ։

Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի.

Եւ եղև ի կալն (Նորա) յաղօթս առանձինն, էին ։ 627։

Քարոզ Խնդրեսցուք ։ Կեցո . Ձայնի– ։ Աղօթք Թագաւոր ։

Digitized by Google

# ԵՐԿՈՒՇԱԲԹԻ · ԲԿ

## Բ · ՕՐ ՎԱՐԴԱՎԱՌԻ

### Ի ԳԻՇԵՐԻ

ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԲԳ

Ճառագայթ փառաց Հօր Որդիդ միածին. որ ընդ-լոյսդ անփայրափայլ մարմնով պարագրեցար. այսօր Թաբօր փառօք փայլեցեր: Որ անտես սրովբէից ան-հաս ես վեր քան զզգայն. ծառայի կերպիւ պարածա-կեալ ընդ լոյսդ անըստուեր. այսօր: Որ հրեղինաց անմերձենալի հուր աստուածութեանդ. ես հողեղէնս խո-նարհեալ լոյսդ արփիական. այսօր:

† Որ գերագոյն փառօք պայծառացոյց զԱդամ ա-ռաջին. զոր ճաշակմամբ պտղոյն մերկացաւ ըզփա-անպատուալս. այսօր վերըստին փառօք զարդարես: Որ ի Նախնումն երեւեալ Մովսեսի ամպովքն ի Սի-այսօր լուսափայլ ամպովք ի Թաբօր յայտնեալ վե-յեաց. դա է իմ Որդի սիրելի լուարուք:

ԱԳ. Որ պատուիրան ճշմարտութեան առաքե-ցեր եկեղեցւոյ քո Քրիստոս. անսահման ժամա-կաւ. աղօթել միշտ առ Աստուած հոգւով եւ մը-տօք: Որ ըզբան քո օրինաց հաստատեցեր պը-ծով մեզ օրինակ. համբերով զգիշերն ի գլուխ յա-ղօթսն Աստուծոյ. բնութեամբ մերով տնօրինաբար. որում կրկնի ծունր ամենայն: Վասն որոյ եւ մեք պաղատեսցուք առ քեզ Քրիստոս. շնորհեա մեզ յա-մենայն ժամ լինել քեզ յանդիմանին. մաքուր աղօ-թիւք ըստ անմարմնոցն որ յերկինս: Աղաչանօք Աստուածածնին անապական քում ծնողին. զգե-նալ աչըս սրտից մերոց. բացցես որդիութեան հայել ի լոյս քո Քրիստոս:

Digitized by Google

Օրհնեցէք ըզՏէր ընդ երկնայինսըն նըմանեալ
դասուց. նոր ժողովուրդք ասելով. քեզ Հօր տըւողիդ
մեզ ըզկեանըս փառօք։ Երգեցէք Տեառն երգ նոր
եկեղեցիք ընտրելոց որդիք Սիոնի ասելով. քեզ Որ-
դւոյ շնորհողիդ մեզ։ Բարեբանեցէք զԱստուած ի
սքանչելիս սըրբութեան նորա ձայնիւ ցընծութեամբ
ասելով. քեզ Հոգւոյդ պարգեւողիդ մեզ։

ՑԱՐ. Օրհնութիւն ի բարձունս. տնօրինեցելոյն ի
յաւէն թագաւորին մերոյ. ‖ ալէլուիա ալէլուիա։
Օրհնութիւն ի բարձունս. անսկզբանելի և համա-
ռօտին յուսոյն մերոյ. ալէ։ Օրհնութիւն ի բարձունս.
անբաժանելի և միասնական սուրբ Երրորդութեանն.
ալէ։

Հաստատութիւն իմ լեր Տէր եւ յոյս փըրկութեան.
որ զառաջին Ադամն ազատեցեր ի մեղաց. ‖ Նորոգեա
և զիս զապականեալըս մեղօք։ Որ յատենի կացեր
անպարտ կողին պատրանօք. եւ արբուցեր մեզ ի կո-
ղահոս աղբերէդ. Նորոգեա։ Աստուածածին անարատ
Մայր Տեառն եւ կոյս Մարիամ. որ եղեր ընդունող
Բանին Աստուծոյ բարեխօսեա առ Տէր վասըն մերոյ
փըրկութեան։

ՀԳ. Այսօր երկնայինքն ուրախացան ընդ երկրաւո-
րացս նորոգման. քանզի նորոգողն էից Հոգին էջ ի սուրբ
վերնատանն. որով նորոգեցան դասք առաքելոցն։
Այսօր հողանիւթեայ բնութիւնս ցընծայ ընդ Հօր հաշ-
տութեան. քանզի որ եբարձ զՀոգին ի մարդկանէ
մարմին եղելոց. դարձեալ վերըստին ըզնոյն պարգե-
ւէ։ Այսօր մանկունք եկեղեցւոյ տօնեն ցընծութեամբ
զգալուստ սուրբ Հոգւոյն. որով զարդարեցան ի զգես-
տըս լուսափայլս եւ գերապայծառս. երգեն ընդ սրով-
բէիցն զերեքսըրբեանն։



Digitized by Google

ՀՆ. Գալոց է Միածինն փառօք և փառօք Հօր. եւ ըզհողեղէն բնութիւնս հրեղէն նորոգէ։ Լուսաւոր են ճանապարհք արքայութեանց. և ի բիւրաւոր բանակը հրեշտակաց ամպովք ընթանան։ Ի վերինն Երուսաղէմ թըռչին ամպովք ընդ առաջ Տեառըն յօդս. եւ այնպէս յաւիտենայն ժամ ընդ Տեառըն լինին։

ՄՏ. Ուրախ լեր մայր լուսոյ Մարիամ. երկիր բանաւոր արեգական նոր օթարան. Լեր բարեխօս փառանաց մերոց։ Խընդա տաճար Բանին Աստուծոյ բարձող տըրտմութեան նախամօրն Եւայի. լեր։ Ցընծա նմանալի արեւելք. քանզի քեւ ծագեաց մեզ լոյս երեւաց Քրիստոս. լեր։

ԽՁ. Եկայք ժողովուրդք ի տաճարի փառաց Քրիստոսի. Տուք ամենեքեան օրհնութիւն ի բարձունս. քանզի թագաւորըն Քրիստոս պըսակեաց ըզսա պաշտելի փառօքն իւրովք. տուք։ — Փառք Հօր։ Իսա և զօրըք հրեշտակաց դասաւորեալ տօն Տեառն. տուք։

— Այժմ և միշտ։ Որ ի յերկինս վերացոյց հրեղէն կառօք զԷղիա. այսօր վայրաբերեալ ի Թաբօր ընդերձ Մովսէսիւ. խօսէին զելիցն որ յԵրուսաղէմ։

---

## ՅԱՐԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԴՁ

Այսօր ըզխորհուրդ անճառելի աստուածութեան քո Քրիստոս. ըզծածկեալն ի սկըզբանէ յայտնեցեր աշակերտացն ի Թաբօր լերինն. Օրհնեալ Տէր Աստուած հարցըն մերոց։ Այսօր զառաքեալսն մարգարէիցն ի քէն ծանուցեր առաքելոցն. ըզՄովսէս և զԷղիա աստուածաբար կոչմամբ ի Թաբօր լերինն. օրհնեալ։ Այսօր անտեսըն յէութեան Հայր

բարձանց երևելով. ընդ ծընեալդ ի սրբոյ կուսէն դաւ-անեաց Որդի իւր սիրելի. օրհնեալ։

Գ. Ընդ Տէր օրհնեցէք բարձր արարէք ընդ նմա յաւի-տեանս։ Որ փայլեացն այսօր ի կուսածին մարմնոյն. զգերապայծառ լոյս աստուածութեանն ընդ Տէր։ Որ յայտնեացն այսօր ի Թաբոր լերինն. զմիութիւն սուրբ Երրորդութեանն ընդ Տէր։ Որ զմիւսանգամ խորհուրդ գալըստեանն իւրոյ. տըպաւորեաց ծագմամբ արփիա-կան լուսոյն ընդ Տէր։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԴՁ

Առաւօտ խաղաղութեան և արուսեակ զըւարթա-րար. այսօր Մարիամ սըրբուհին ի փառըս քո Քրիս-տոս ծագեաց մեզ լոյս յորդւոցն օրինաց. ‖ անդա-դար երգով սրբօք ընդ քեզ ը միշտ մեծացուցանեմք։ Դրախտ աստուածային և արեւելք իմանալի. այ-սօր Մարիամ հրաշագեղ ծնեալ ի յԱննայէ ի մայ-րութիւն քո հրաւիրեալ Քրիստոս Որդի Աստուծոյ. ան-դադար։ Տապանակ ապրեցուցիչ և տաղաւար աբրա-համեան աստուածընկալ. այսօր Մարիամ լուսա-պայծառ միածին ծընունդ յայտնեալ ծնողաց ի ծնո-ղութիւն քո կոչեցեալ միածին Որդի Աստուծոյ. ան-դադար։

ՈՂՈՐՄՆԱ ԴՁ

Որ զճառագայթս աստուածային ցուցեր այսօր մար-գարէիցն. որոց ցանկալին. տեսանել զանտեսըն սե-րովբէից. ‖ լոյսդ անճառելի ողորմեա։ Որ զդաւա-նումըն Պետրոսի ընդ քեզ Որդի Հօր Աստուծոյ. Հայր ն: յամպոյն. վըկայեալ այսօր Որդի իւր դաւանէր. լոյսդ։ Շնորհեա Տէր և մեզ մեղաւորացս ի միւսան-գամ քո գալըստեանն. տեսանել ընդ քեզ հայրական փառօք ի նորոգել ըզտիեզերս. լոյսդ։

Digitized by Google

### ՏԷՐ ՑԵՐԿՆԻՑ ԴՁ

Ցընծայ այսօր փառօք Միածնին. լուսաւորն Թա-բոր հանդերձ Հերմոնիւ. բարձրացեալ գերագոյն Սի-նայիւ. եւ էջք Աստուծոյ դուռն երկնից ի նմա։ Ցըն-ծան այսօր լերինք Աստուծոյ. արարողին երեւելք ընդ առածըն. պայծառացեն յաւիտենական լերանցն. զոր առաքելոց եւ մարգարէից։ Ցընծայ այսօր լուսաւորն փե-բին Սիոնի. հարսնարան անմահ արքայի. տեսա-նելով զերկնաւոր փեսայն. զարդարեալ լուսա-հայրական փառօք։

Քարոզ Ասասցուք։

### ՄԱՆԿՈՒՆՔ ԲԿ ՍՏ.

Օրհնեցէք մանկունք ընդ երկնայնոցն ըզհայրն երկնաւոր. որ մարմնացեալ Բանին. վըկայեաց յեր-կնից այսօր ի Թաբոր լերին։ Գովեցէք ընդ սերովբէից զՈրդին միածին որ փայլեաց մարմնով զլոյս աստուածութեանն այսօր։ Բարեբանեցէք ընդ քերովբէից զՀոգին ճշմարիտ. որ լուսափայլ ամպ-ճակցին հովանացեալ այսօր։

Ձայնի Մանկանցն Քար. խնդր։ կեցո. Յայնժ։ Աղ. Քաւմ ամ։

---

ՑԵՐԵԿՈՅԻ Մեսեդի յարութեան. ԲԿ։ Քար. Ասասցուք։
ՀԱՄԲԱՐՁԻ ԲԿ ՍՏ. Օրհնեցէք մանկունք։ Ի ճշ։
Ձայնի Քարոզ խնդրեսցուք։ կեցո. Յայնժ։ Աղ. Թագաւոր։

---

# ԵՐԵՔՇԱԲԱԹԻ. ԳՁ

## Գ. ՕՐ ՎԱՐԴԱՎԱՌԻ

---

### Ի ԳԻՇԵՐԻ

### ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԳՁ

Այսօր որ էն ի յերկինս Բան եւ ծընունդ Հօր միածին. ըզծածկեալն ի յէից խորհուրդ յայտնեաց ա-շակերտացն. ծառայից ըզկերպարանըն ծածկելով ա-

տուածութեամբն։ Այսօր հընչեաց յամպաքեալըն հայրականն բարբառ յերկնից. ասէ դա է Որդի իմ սիրելի ընդ որ հաճեցայ. որ ըզբնութիւնն աստուածային կերպիւ ծածկեալ ծառայական։ Այսօր վիմին հաւատոյ յայտնեալ զխորհուրդ Երրորդութեանն. երրեակ յօրինմամբ տաղաւարացըն խորհըրդոյ. որում ըզմեզ մաքրեսցես լինել տաճար Երրորդութեանն։

† Որ յանմարմնունս ի յաթոռ բազմեալ ընդ Հօր և ընդ Հոգւոյն. անըսկիզբն Աստուած Բանդ ի Հօրէ առաքեցար. ծառայի զգեցար ըզկերպարան ծածկելով զաստուածութիւնդ։ Այսօր ցուցեր ի Թաբոր զանտանելի լուսոյդ փայլումն. ծագեցար աշխարհի արդարութեան արեգակն. յայտնելով աշակերտացն ըզպայծառագրեալ աստուածութիւնդ։

ԱԳ. Որ արարեր զօրութեամբ զիմանալեացն աշխարհ վերին. և ի նմա հաստատեցեր տընտես ըզպետըս հրեղինացն. Օրհնեմք զանհասանելի զօրութիւնդ։ Որ տիրապէս մեծատունդ ստեղծեր երկրորդ աշխարհ զգալի. և ի դրախտն որ յադենի տընտես եդեալ զմարդն առաջին. օրհնեմք։ Որ շինեցեր բարձրագոյն զեկեղեցի քո խորհըրդեամբ. և ի սմա կարգեալ տընտես զքարոզս Բանին ճըշմարտութեան. օրհնեմք։ Անտանելւոյն տաղաւար բարձող էիցըս բարձողին. որ ծընար զԱստուած մարմնով զանմարմնաբար ծընունդըն Հօր. բարեխօսեա վասըն մեր Աստուածածին Մարիամ։

ԱԳ. Որ տիրական ես առ ի քէն կարգեալ տընտես նութեան մերոյ. իմաստութեամբ ըզպարտիս եթող քոոց պարտապանաց. Թող և ըզմեր ըզյանցանս ողորմութեամբըդ քո Քրիստոս։ Որ զպատմուճանն առաջին

զոր զգեցուցեր օծմամբ Հոգւոյն. մերկացաք մեղօք ըստ նախահօրն պատրանաց. զգեցո ըզնոյն վերըստին ողորմութեամբդ քո Քրիստոս: Ցաստուածային կայծակունն ի սրովբէիցն անհըպելին. անմարմնապէս մերձեցաք գոլ պատրաստական քում խորհրդոյն. շնորհեա ըզնոյն մաքրութեամբ ի թողութիւն մեղաց մերոց: Որ վառեցար ի յարփւոյն եւ ոչ կիզար ըստ մորենւոյն. այլ ետուր զհացըն կենաց կերակուր բանաւորաց. բարեխօսեա առ Քրիստոս ջընջել ըզգիր մեղաց մերոց:

ՑԱՐ. Զթագաւորըն Քրիստոս օրհնութեամբ երգով բարեբանեսցէք ամենայն երկիր: Արարողին երկնի եւ երկրի. մատուցուք երգով գոհաբանութիւն ամենայն երկիր: Երրորդութեանն եւ միաստուածութեանն. մատուցուք պատիւ երկըրպագութիւն յաւիտեանս ամէն:

ՕՐՀ. Ցօրհնութիւն նոր օրհնեսցուք ըզՏէր. որ ի վերայ քերովբէիցըն հանգչի եւ ի զօրաց երկնաւորաց փառաբանի սրբասաց ձայնիւ: Որ կամաւոր խոնարհութեամբն իւրով. առերեալ ըզզօրութիւն մահու. եւ երեքօրեայ յարութեամբն իւրով պարգեւեաց մեզ կենդանութիւն: Բարեխօսութեամբ սուրբ Աստուածածնին. պահեսցէ զեկեղեցի իւր սուրբ. եւ ի միւսանգամ գալըստեան իւրոյն նորոգեսցէ ի փառս:

ՀԳ. Արեգակն արդարութեան Քրիստոս ծագեալ յաշխարհս հալածեաց ըզխաւարն անգիտութեան. եւ յետ մահու եւ յարութեան համբարձաւ առ Հայր յորմէ ծագեաց. որ երկըրպագի յերկնաւորաց եւ յերկրաւորաց ընդ Հօր եւ սուրբ Հոգւոյն. Ա վասն որոյ եւ մեսք երկըրպագանեմք Հօր Հոգւով եւ ճըշմարտութեամբ: Որ փոխանակ ծոցածին Բանին ծէր եւ յերկինս. առաքեցաւ աւետիքըն Հօր ի բարձանց Հո-

Digitized by Google

զեն ճշմարտութեան. մխիթարել զորս յԱդամայ տրտ-
մեցելոց եւ հրազինել զընտրեալ դասս առաքելոցն.
վասն: Այսօր տըրտմականն և գիշերայինն լուծան եր-
կունք ծննդեան նախամօրն. քանզի զծնեալսն մար-
մնով ի մահ եւ յապականութիւն. վերստին ծնանի
Հոգին յորդիս լուսոյ Հօրն երկնաւորի. վասն:

Հն. Ի ձայն մեծի զուարթնոյն և ի հնչումն հրա-
շալի փողոյն. ուր հողացեալ մարմինք մարդկան նո-
րոգին. ‖ յայնմ աւուր ահեղին յիշեա Տէր և
ըզմեր ըզննջեցեալսն եւ հանգո ընդ սուրբս քո:
Յորժամ նշան տէրունեան ճառագայթիւք փայլէ. և
Թագաւորըդ Թագաւորաց փառօք տեսանի. յայնժամ: Յոր-
ժամ ատեան դատաստանին դնի. և դպրութիւնք
հրաշիցն բանին. յայնժամ:

Մն. Որ յէութեանդ ես ընդ Հօր և սուրբ Հոգւոյն
անընկեզրն Որդի. խոնարհեցար ի հայրական ծոցոյ.
մարդ եղեալ մարմնացար ի կուսէն. բառնալով զյաղ-
թումն մահու յանցանաց նախահօրըն. ‖ Քեզ երգեմք
ընդ զօրըս հրեշտակացն. ի մէջ հովուացն, օրհնեալ
ես Քրիստոս նախայաւիտեան Բանդ: Այսօր ծընար
որ ի Հօրէ յառաջ քան զյաւիտեանս Որդի. ճառագայթ
փառաց և ծագումն յանմեկնելի լուսոյն. աստղապտու-
չակ տեսլեամբըն յայրին իջեւանի եւ ի մըսուր յանբա-
նից բազմեալ. քեզ: Թագաւոր փառաց Քրիստոս և ա-
րարիչ բոլորից. Աստուած հզօր իշխան Հայր հան-
դերձեալ լուսոյն. մանուկ երեւեալ այսօր անփոփոխե-
լիդ ի յէութեան. քեզ:

Խջ. Այսօր ցընծան դասք հրեշտակաց ընդ հաստա-
տել քո ի յերկրի. որով լուսեղէն խորան երկնանըման
եկեղեցի սուրբ. ուրախ լեր վէմ պատուական

հովանի մեր և յոյս։ Զուարճացիր հարսն անարատ ըն-քողարկեալ վայելչապէս. զարդարեալ հանդերձ փառօք եւ ել ընդ առաջ երկնաւոր փեսային. ուրախ լեր մայր ամուլ բազմածին ահա փեսայն գայ առ քեզ։ — Փառք Հօր։ Աստանօր նորոգեցաւ մեզ աւազան մը-կըրտութեան. յորգանոց մօր Հոգւոյն յղացեալ ծնն-դեամբ վերստին զհաւատացեալքս ի Քրիստոս. ուրախ լեր մայր անմայր յառաջնումն ահա Որդին գայ առ քեզ։
— Այժմ և միշտ։ Ցորմէ ահիւ զարհուրեալ ընտրեալ դասուց առաքելոցն. երրակի խորհրդով յօրինէին քեզ տաղաւար. որով ըզմեզ սըրբեսցես լինել տաճար քեզ հոգեւոր։

---

ՑԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԴԿ

Այսօր զխորհուրդն անճառ զծածկեալն յաւիտենից եւ յազգաց. յայտնեցեր փառօք ի Թաբոր լերին. Աստուած հարցըն մերոց։ Այսօր բըղխեալն [illegible]-մնով յարմատոյն Ցեսսեայ պաւազան. ծաղկեցաւ բու-սով ի Թաբոր լերինն. Աստուած։ Այսօր անմահու-թեան հոտ անոյշ բուրեաց ի Թաբոր. Թըմբրեալ ըն-դարմացոյց զդասս առաքելոցն Աստուած։

Գ. ԸզՏէր օրհնեցէք եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան։ Զլոյս փառացըն Հօր. ծագեալ այսօր ի լերինըն Թաբոր. ժողովուրդք բարձր։ Զամենատուրն Հոգին. որ ի նմանութիւն լուսափայլ ամպոյ յայտնե-ցաւ ի Թաբոր. ժողովուրդք։ Զյաւիտենիցըն Հայր որ երեւեցաւ այսօր յերկնից վըկայեալ Միածնին. քա-հանայք բարձր։

ՄԵԾԱՑՈՒՑԷ ԴԿ

Որ զանճառելին ծնար սուրբ Աստուածածին կոյս։ 103։

ՈՂՈՐՄԵԱ ԴԿ

Որ յանըսկըզբըն էէն անյեզապէս ծընեալ. եւ սովորէականըն ծածկէիր Թեւօք. այսօր ըզպայծառագրեալըն մարմնով ցուցեր զաստուածութեան քո զփառս աշակերտաց քոց Տէր. ‖ քո. ամենապայծառ ծագմամբդ ողորմեա մեզ Աստուած: Որ ըզստուերականն օրէնս մովսեսական տառիցն. ի սինէականըն խօսէիր լերին. այսօր ըզՄովսէս և զՀեղիաս ածեալ ի մեռելոց եւ կենդանեաց ի տեսիլ փառացն քոց. քո: Որ զօրինակ մեծի զալըստեան քո Տէր. ի Թաբորականըն ծանուցեր լերին. քանզի տեսին դասք առաքելոցն ըզնախանշարսն եկեալ փառօք խօսէին զելիցն յերուսաղէմ զխորհուրդ. քո:

ՏԷՐ ՑԵՐԿՆԻՑ ԴԿ

Այսօր ընդ հրեշտակս ի բարձունս. ցընծասցուք տօնիւս. ի ծագել իմանալի լուսոյ աստուածութեանդ. ‖ օրհնեմք զքեզ էակիցըդ Հօր. որ եկիր ի փըրկել ըզմեզ: Այսօր յայտնեցեր ի Թաբօր. ընտրելոց դասուցն. առաքելոց եւ մարգարէից զաստուածային քո զփառս անճառելիս. օրհ: Այսօր Հայր յամպոյն վըկայեալ. էական բանիդ միացեալ ընդ կուսածին մարմնոյդ ասէ դա է իմ Որդի ընդ որ հաճեցայ. օրհ: Այսօր ըզծագումն արդարոցն արեգակնակերպ փայլմամբ. ծանուցեր ծագմամբ փառաց քոց Տէր յարքայութեանդ. օրհ:

Քարոզ. Ասասցուք:

ՄԱՆԿՈՒՆՔ ԴԿ ՍՏ.

Լերինք ամենայն. այսօր ցընծան ընդ ելանել քո Տէր ի Թաբօր. յորում պարեն ընդ երկնայնոցն դասք առաքելոց եւ մարգարէիցն. ընդ

‖ որս եւ ըմեմամք օրհնեմք յաւէժ քան զարեւ-
ըզլոյս : Որ յանուանէ տեառնանելով. մարգարէին
զամստանոր ծագումըն լուսոյ քո Տէր. զորհէր.
թաբոր և հերմոն ի յանուն քո ցընծայցեն. ընդ
որս : Որ ցուցեր ի թաբոր . զքեզ կենդանեաց և
մեռելոց Տէր եւ արարիչ. զՄովսէս եւ զէղի-
ղիա ի տեսիլ փառաց քոց կոչելով ընդ ընտրեալ քո
առաքելոցն . ընդ որս :

Ձնի Քար. խնդրեսցուք: կեցո. յայնժ : Աղ. քոյսմ ամէն :

---

ՑԵՐԵԿՈՑԻ Մեսեդի յարութեան ԳՁ. Քար. Ասասցուք:
ՀԱՄԲԱՐՁԻ ԴԿ ՄՏ. Լերինք ամենայն այսօր : 921 :
Քարոզ խնդրեսցուք: կեցո. յայնժ : Աղօթ+ Թագաւոր:

---

# ՉՈՐԵՔՇԱԲԱԹԻ · ԳԿ

## Պահոց

ՑԱՌԱՒՕՏՈՒ ՀԱՐՑ ԱԿ · Օրհնեալ և փառաւոր: 212:

---

# ՀԻՆԳՇԱԲԱԹԻ · ԴՁ

## Ս · Եսայեայ մարգարէին

Ի ԳԻՇԵՐԻ ՕՐՀ. ԱԿ. Որ զաստուածային զօր : 881 :

---

### ՑԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԱՁ

Որ յերկնային զինուորութեանցդ անդադար ձայնիւ երեքսրբեան օրհներգութեամբ փառաբանիս. ‖ Հարցըն մերոց Աստուած օրհնեալ ես յաւիտեան : Որ շնորհեցեր մարգարէիցն անտեսանելի ըզկենդանաբեր տնօրէնութիւնըդ քո ի սուրբ կուսէն . հարցըն : Որ պարգեւօք սուրբ Հոգւոյն վերափոխեցեր ըզսիրելիսըն քո յերկնային խորանսն . հարցըն :

Գ. Ըզտէր օրհնեցէք ‖ և բարձր արարէք ըզնա յա-

Digitized by Google

ւնտեան: Եկեղեցիք հեթանոսաց կոչեցեալք ի Քրիստոս. յաղթերգացն Իսրայելի օրհնեցէք ըզՏէր. և բարձր: Քահանայք եւ պաշտօնեայք ընդ վերին զուարթունս. հոգեւոր հնչմամբ երգով գովեցէք ըզՏէր. եւ բարձր:

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԱՁ

Զքեզ երեւեալ դուռն առ Եզեկիէլիւ մարգարէ: 196:

ՈՂՈՐՄԵԱ ԱՁ

Որ ըզծածկեալ խորհուրդ կենաց տնօրէնութեանն քո Քրիստոս. ընդհանուր ազգի մարդկան յայտնեցեր մարգարէիւքն. ըզծագումն լուսոյ արեգական արդարութեան: Որք ուսուցին Իսրայելի երկրպագել քում տէրութեանդ. և յայտնի քարոզեցին ըզփրկութիւն հեթանոսաց. եթէ գայ մեսիայ թագաւոր Իսրայելի: Որք տաճարին նմանութեամբ ցուցին զարգանդ սուրբ կուսին. ուստի ծնեալ եղեւ մեզ հաց կենաց անմահութեան. զոր օրհնեն անդադար երկնային զինուորութիւնքն:

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԱՁ

Երգս առեալ մարգարէիցն հրաշալի ձայնիւ անդադար օրհնաբանեն ըզմարմնացեալն ի սուրբ կուսէն. Որ երեւեցաւ մեզ ի փրկութիւն: Զնեղութիւն եւ զչարչարանս յանձն առին կամաւորապէս ժուժկալեալ համբերեցին վասն անուանն Տեառն. որ երեւ: Աներկիւղ քարոզեցին յաշխարհի ըզճըշմարիտ մարդեղութիւն մարմնացելոյն ի սուրբ կուսէն. որ երեւ:

---

ՄԱՆԿՈՒՆՔ ԵՒ ՀԱՄԲ. ԴԿ. Որ զյառաջա: 887:

---

# ՈՒՐԲԱԹ. ԴԿ

Պահոց

ՅԱՌԱՒՕՏՈՒ ՀԱՐՑ ԴԿ. Յաւիտենից Աստուած: 152:

---

# ՇԱԲԱԹ· ԱՁ

## Ս· Թադէոսի առաքելոյն եւ Սանդխտոյ կուսին

### Ի ԳԻՇԵՐԻ

### ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԳՁ

Երանելի սուրբ առաքեալք հրաւիրեալք ի սկըզբանէ եւ ընտրեալք յորովայնէ սպասաւորք և բարեկամք եւ վըկայք Աստուածորդւոյն. բարեխօսեցէք առ Տէր վասն անձանց մերոց: Որք առէք իշխանութիւն ի վերայ ազգի մարդկան. կապել և արձակել ի յերկինս եւ ի յերկրի. արձակեցէք ըզմեզ ի կապանաց մեղաց մերոց: Խաչակցեալք ընդ Քրիստոսի եւ ընդ նըմին թագաւորեալք. ի միւսանգամ գալըստեան նորա նըստելոց էք դատաւորք. թողութիւն շնորհեցէք եւ մեզ մեղաւորացս:

† Զօրս առեալ ի ծովակէն արարեր որսորդս մարդկան. որսալ զամենեսեան յարքայութեան սեղանն. Բարեխօսութեամբ սոցա Քրիստոս խնայեա ի մեզ: Որ հրամայեցեր հոտ անոյշ լինել ընդ տեղերս. ոմանց հոտ ի մահուանէ ի մահ եւ ոմանց ի կենաց ի կեանս. բարեխօսութեամբ: Որոց խոստացար նըստել յաթոռ դատողական. դատել զազգն Իսրայելի յայնմ աւուր յահեղին. բարեխօսութեամբ:

† Զառաջնորդս և զվարդապետս եկեղեցւոյ քոյ սըրբոյ. յիշատակաւ պատուեմք այսօր. Բարեխօսութեամբ սոցա Քրիստոս խնայեա ի մեզ: Ծիր մըշտակէ անպարտելի կաթողիկէ եկեղեցւոյ. եւ պըսակ պարծանաց հաւատացելոց. բարեխօսութեամբ:

ՅՈՎ. Առաքեալըն յԱստուծոյ կարապետ. մեծն ի մարգարէս Մըկըրտիչըն Յովհաննէս. պատրաստէր ճանապարհս թագաւորին յաւիտենից: Վըկայեաց եւ աւէ-

չեմ ես Քրիստոսն այլ առաքեալ եմ առաջի նորա. եւ հարսին եկեղեցւոյ փեսայ Քրիստոս է արքայն երկնից: Տեսանէր ըզՅիսուս զի գայր առ նա. աղաղակեաց և ասէ. ահա գառն Աստուծոյ որ եկն ի բառնալ ըզմեղս աշխարհի:

ԴՐԻ. Այսօր տօնէ եկեղեցի ուրախութեամբ ըզյիշատակ սըրբոյն Գրիգորի. որով լուսաւորեալ պայծառացաւ փայլելով պէս. ի հանդերձս յոսկեհուռս զարդարեալ եւ պըսակեալ. ‖ օրհնեցէք մանկունք զՔրիստոս թագաւորն: Այսօր ցընծան նորածնեալ որդիք լուսոյ յիշատակաւ սուրբ Լուսաւորչին. որով հրաւիրեցան ի հարսանիսն անապականն. մըտանել ընդ փեսային երկնաւորի ի յառագաստըն լուսեղէն. օրհ: Այսօր քահանայք հոգեւոր պատարագին ըսպասաւորք վերապատուեն ըզքահանայապետըն սուրբ. որով երկնային քահանայութեանցըն հաղորդեալք. յոր վերափոխեալ այսօր մըտանէ ի սրբութիւն սրբոց միշտ բարեխօսել առ Տէր վասըն մեր. օրհ:

ՀԱՅՐ. Ժողովեալ սուրբ հայրապետքըն հրաւիրմամբ Հոգւոյն սրբոյ. վերըստին հաստատեցին զառաքելական քարոզութիւնն. ի վերայ վիմի հաւատոյ հիմանն սուրբ եկեղեցւոյ: Որք զի նոյն Հոգւոյն սրբոյ արիաբար պատերազմեալք. վանեցին զընդդիմամարտ մոլութիւն հերձուածողացն. որպէս հովիւք քաջք հերքեցին ըզգայլսն ի հօտէ գառանց: Եւ զհաւատըս ճըշմարիտըս սուրբ Երրորդութեանն. ընդհանուր քարոզեցին յեկեղեցիս ուղղափառաց. հաւատալ ի Հայր եւ յՈրդի եւ յամենասուրբ Հոգի:

ՈՍԿ. Որք արժանաւորեցայք կոչել յաշակերտութիւն առաքելոյն Թադէոսի. եւ աստուածային հրով

մաքրութեան ոսկի փորձեալ գըտայք ի բնակարանն հրեշտակաց. ‖ Ով երանելի սուրբք Ոսկեանք բարեխօսեցէք առ Տէր. մաքրել ըզմեզ ի մեղաց մերոց։ Որք անհրաժեշտ դաւանութեամբ քարոզեցէք ըզՔրիստոս ի դրունս թագաւորին. մերկացեալք ըզքաղցր հանգստեանն. ի յակոբայն Եփրատայ ի ծաղկազարդ վայելչութեանն. ով։ Որք անպարտելի նացէք ի հրապուրանաց որդւոյ թագաւորին. չարչարեալք վասն Քրիստոսի. արագապէս խողխողեցայք պատարագ ընդունելի. ով։

Հգ. Որ համագոյդ ես Հօր և Որդւոյ. անճառապէս բըղխումն ի միշտ էէն. այսօր բըղխեցեր ջուր կենդանի յԵրուսաղէմ ‖ Հոգի Աստուծոյ ողորմեա։ Որ աթոռակից ես Հօր և Որդւոյ. որով կենդանածնեալք ի ջուրս արարածք. այսօր որդիս Աստուծոյ ծնանիս ի ջուրց Հոգի։ Որ փառակից ես Հօր և Որդւոյ. եւ քննես ըզխորս Աստուծոյ. այսօր խարազնիմաստից զյիմարս աշխարհի տարածեր Հոգի Աստուծոյ ողորմեա։

Հն. Արարչագործ Աստուած. զարարածըս քո անտեսս աւանդեր. այլ գըթա ի նորոգեալս ըզմեզ եւ համդ ընդ սուրբըս քո. ի խորան քեռ սերովբաց։ Արարչակից Հօր Որդի. ի միաւորեալ զալըրտեանն. անդամալուծեալս պահեա ըզնորոգեալսըն։ Կենդանարար սուրբ Հոգի. յորժամ նորոգեսցես երկիր. նորափետուր զարդարեա ըզնորոգեալսըն։

Մս. Ըզծնեալսն ի սուրբ կուսէն ընկալեալ ի տաճար մեր ... հաւատով. որպէս երբեմն ի գիրկս Սիմէոնի։ Օրհնեսցուք զաւետեալն ի Հօրէ. որ ի

խանձարուրըս պատեցաւ վասըն մեր. եւ փրկեաց ըզմեզ յանիծիցն Ադամայ: Ուրախ լեր անապատ ծարաւի. եւ ծաղկեա հաւատով երանութեամբ յայսըմհետէ. քանզի Քրիստոս յոյս յայտնեցաւ հեթանոսաց:

Խջ. Այսօր որ էն ի յերկինս Բան եւ ծընունդ Հօր միածին. ըզծածկեալն ի յէից խորհուրդ յայտնեաց աշակերտացն. ծառայի ըզկերպարանըն ծածկելով անտեսութեամբն: Այսօր հընչեաց յառաքեալըն հայրական բարբառ յերկնից. ասէ դա է Որդի իմ սիրելի ընդ որ հաճեցայ. որ ըզգոնութիւնն աստուածային կեպիւ ծածկեալ ծառայական: — Փառք Հօր: Այսօր վիմին հաւատոյ յայտնեալ զխորհուրդ Երրորդութեանն. Երրակի յօրինմամբ տաղաւարացըն խորհըրդոյ. որում ըզմեզ մաքրեսցես լինել տաճար Երրորդութեանն:

— Այժմ և միշտ: Հազարապետք աստուածային խորհըրդոցն. եւ բացէք դրան արքայութեան երկնից. բարեխօսեցէք առ Տէր վասն անձանց մերոց:

---

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

### ՀԱՐՑ ԱՁ

Էակից Բանըդ Հօր եւ Հոգւոյն. որ իջեր ի յերկնից ի փրկութիւն ազգի մարդկան ‖ Աստուած հարցըն մերոց: Որ պահեցեր յաղթող ըզճըգնութիւն սըրբոց առաքելոցն. այսօր և մեք ընդ Նոսին ցընծութեամբ օրհնեմք ըզքեզ Աստուած: Որ առաւել բարձրացեալդ ես յաւիտենից. այսօր ընդ դասս վըկայից քոց բարեբանեմք ըզքեզ Աստուած:

Գ. Ըզտէր օրհնեցէք ‖ բարձր արարէք ըզնա յաւիտեանս: Որ ընտրեաց զերանելի առաքեալսն. եւ նոքօք որսաց ի հաւատս ըզտիեզերըս Քրիստոս. բարձր:

Որք ըզխաւար կռապաշտութեանցըն վանեցին. եւ ըզլոյս գիտութեան ընդհանուր յերկիր ծաւալեցին. ընդ նոսին բարձր արարէք ըզնա յաւիտեան։

ՄԵԾԱՑՈՒՑԷ ԱՁ

Այսօր նոր ժողովուրդք. ցնծացէք ընդ։ 767։

ՈՂՈՐՄԵԱ ԱՁ

Տէր որ զգըթութիւնըդ քո զառատ. հեղեր յերկնից ի մէջ սըրբոց առաքելոց քոց ‖ աղաչանօք սոցա ողորմեա։ Որ ի ձեռըն սոցա սըփռեցան շընորհք հոգւոյդ սըրբոյ ընդ ամենայն երկիր. աղաչանօք։ Որ օրհնօք լուսաւորեցեր մըկըրտութեամբ աւազանին զեկեղեցի քո սուրբ. աղաչանօք։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԱՁ

Ա. Որք ի սկըզբանէ պատուեալ եղեն ի սէր բարձրից Հօր. առաքելական կոչմամբ ըզտիեզերս հրաւիրեցին յուսով հասանել մասին. ‖ վարդապետութեամբ սոցա ամենեքեան օրհնեսցուք ըզՏէր։ Որք ականատեսք և սպասաւորք եղեն մարմնացելոյ Բանին. քեր ի վերոյ անմարմնոց դասուցն հանդիպելով շնորհին. վարդապետութեամբ։ Որոց դատողական աթոռ անջեղ ատենին հանդերձեալ մընայ. կատարել ի մեզ դատաստան ըստ գրեալսն. առ սոսա անկցուք զըղջացեալ անձամբ պաղատելով. հաշտեցուցանել սոքօք ընդ ըմեզ զահ[illegible] զդատաւորն։

Բ. Առաքեալք Աստուծոյ. սիւնըք հաստատոյ կաթուղիկէ եկեղեցւոյ. Քրիստոսի Աստուծոյ երկնաւոր վարդապետին աշակերտք. ‖ բարեխօսեցէք շնորհել զխաղաղութիւն ամենայն աշխարհի։ Բարեկամք Քրիստոսի. եւ հաղորդակիցք աստուածային խորհըրդոցն. ընդունողք ըզԲանըն կենաց և լուսաւորիչ-

րբք տիեզերաց. բարեխօսեցէք: Դատաւորք անհեղ
ատենին. եւ դատապարտողք ըզՔրիստոս ոչ խոստովա-
նողաց. աղաչեմք ըզձեզ բարեխօսեցէք:

ՄԱՆԿՈՒՆՔ ԴԿ

Քեւ պարծի այսօր սուրբ եկեղեցի. որ վըկայու-
հի սուրբ Սանդուխտ. որ ըզհայրական քո Թողեր
զպաշտօն. վասըն Քրիստոսի հեղեր զարիւն
քո սուրբ: Աշակերտեցար առաքելոյն Թադէոսի. եւ ի
հաւատըս ճըշմարիտըս հաստատեցար. ոչ խառնակե-
լով ընդ հեթանոսական պաշտօնսն. արժանի ե-
ղեր վերանալ առ Հայր: Որ ըզտիկնու-
թեանըն քո Թողեր ըզփառս. եւ աստուածային փա-
ռօքըն զարդարեցար. այսօր դասակցեալ ընդ զը-
արթունս երկնից. վասըն մեր առ Տէր բա-
րեխօսեա:

ՑԵՐԵԿՈՑԻ

ՀԱՄԲԱՐՁԻ ԱՁ. Սուրբ ես Տէր զօրութեանց: 110:
Ի քէն հայցեմք բազումողորմ: 111:

# Ա. ԿԻՐԱԿԷ. ԱԿ

ՋԿՆԻ ՎԱՐԴԱՎԱՌԻ

ՑԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԲՁ

Որ ի յերկնից իջեր անսկիզբն: Իւր ասէ: 591:
ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԲՁ. Զքեզ կոյս և մայր և: 603:

ՑԵՐԵԿՈՑԻ ՀԱՄԲ. ԱԿ. Ա. Առաքեցար: 29:

# Ա. ԵՐԿՈՒՇԱԲԱԹԻ. ԲՁ

Ս. Շուշանայ դստեր մեծին Վարդանայ

Ի ԳԻՇԵՐԻ ՕՐՀ. ԲՁ. Օրհնեն զքեզ Աստուած: 58:
ՑԱՌԱՒՕՏՈՒ ՀԱՐՑ ԲՁ. Ընդ սուրբս քո բարեբ: 86:

# Ա. ԵՐԵՔՇԱԲԱԹԻ. ԲԿ

## Ս. Կղպրիմանոսի եպիսկոպոսին եւ Յուստինեայ կուսին

Ի ԳԻՇԵՐԻ. *ՕՐՀ. ԲԿ. Շնորհեա մեզ Քրիստոս*։ 62։
ՅԱՐՈՒԹԵԱՆ ՀԱՐՑ ԲԿ. *Օրհնեմք զքեզ Տէր*։ 88։
*ՄԱՆԿՈՒՆՔ ՆԻ ՀԱՄԲ. ԴԿ. Ցիշատակ Քրիս*։ 829։

---

# Ա. ԶՈՐԵՔՇԱԲԱԹԻ. ԳԶ

## Պահոց

### ՅԱՐՈՒԹԵԱՆ

ՀԱՐՑ ԱԿ

*Փառաւորեալ յաւիտեան. Աստուած հարցըն մեր։ կեցո ըզմեզ։ Որ արարեր ողորմութիւն ի մէջ հնոցին. եւ կենարար ցօղով քո փրկեցեր զերիս մանկունսն։ Զհուրըն բորբոքեալ մանկունքըն հաւատովըն շիջուցին. եւ պատկերի ոսկւոյ ոչ մատուցին խունկս. այլ քեզ Աստուած հարցըն մերոց։*

*Գ. ԸզՏէր օրհնեցէք ‖ բարձր արարէք ըզնա յաւիտեան։ Ցօղէր ըզցօղ ողորմութեան երից մանկանցն ի հնոցին բարձր։ Բանն Աստուած լոյս ծագեալ ի հնոցըն զգալուստ Միածնին երգէին մանկունքըն բարձր։ Իջեալ առ նոսա կենարար հրեշտակըն. զհուր ի յերկինըս տայր փառաւորել. բարձր։*

ՄՆԱՑՈՐԴՍ ԱԿ

*Նոր խորանիդ արեգականն արդարութեան*։ 566։

ՈՂՈՐՄԵԱ ԱԿ

*Մեղայ Տէր բազումողորմ Աստուած ‖ մեղայ ողորմեա։ Մեղայ Տէր եւ անկանիմ առաջի քո մեղայ. Մեղայ Տէր խոստովանիմ ըզյանցանս իմ մեղայ։*

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԱԿ

*Ընդ երկնային զօրութիւնսն օրհնեցէք ըզՏէր —*

*մենայն երկիր եւ բնակիչք երկրի ։ Զանունն սուրբ փառաց նորա. գովեցէք յերկրէ որդիք մարդկան. իշխանք եւ դատաւորք երկրի ։ Զայնիւ երգով ցնծութեամբ. բարեբանեցէք զԱստուած ի սրբութեան նորա մանկունք եկեղեցւոյ սրբոյ ։*

---

## Ա · ՀԻՆԳՇԱԲԱԹԻ · ԳԿ

**Ս · Քառասունն եւ հինգ վկայիցն, եւ Ս · կուսանացն Եւփիմեայ եւ Քրիստինեայ**

**Ի ԳԻՇԵՐԻ** *ՕՐՀ · ԳԿ ·* Այսօր հրեշտակաց դասքն ։ 69 ։
**ՅԱՌԱՒՕՏՈՒ** *ՀԱՐՑ ԲԿ ·* Որք ի մարտի անօրի ։ 89 ։
*ՄԱՆԿՈՒՆՔ ԵՒ ՀԱՄԲ ԴԿ ·* Յիշատակ Քրիստոսի ։ 829 ։

---

## Ա · ՈՒՐԲԱԹ · ԴՁ

**Պահոց**

**ՅԱՌԱՒՕՏՈՒ** *ՀԱՐՑ ԱՁ ·* Օրհնեալ ես դու ։ 130 ։

---

## Ա · ՇԱԲԱԹ · ԴԿ

**Ս · Նախահարցն Ադամայ, Աբելի, Սեթայ, Ենովսայ, Ենովքայ, Նոյի, Մելքիսեդեկի, Աբրահամու, Սահակայ, Յակովբայ, Յովսեփայ, Մովսէսի, Ահարոնի, Եղիազարու, Յեսուայ, Սամուելի, եւ այլոց Նախահարցն**

**Ի ԳԻՇԵՐԻ** *ՕՐՀ · ԱԿ ·* Որ զաստուածային զօրու ։ 881 ։
**ՅԱՌԱՒՕՏՈՒ** *ՀԱՐՑ ԴԿ ·* Առ քեզ Աստուած ։ 101 ։
*ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԴԿ ·* Նահապետացն Աբրահամու ։ 271 ։
*ՈՂՈՐՄԵԱ ԴՁ ·* Որ աւետաւոր քում գալստ ։ 885 ։
*ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԴՁ ·* Այսօր ժողովուրդք որք ։ 886 ։
*ՄԱՆԿՈՒՆՔ ԴԿ ·* Այսօր ցնծայ զուարճացեալ ։ 886 ։

---

**ՅԵՐԵԿՈՅԻ** *ՀԱՄԲ ԱՁ ·* Սուրբ ես Տէր ։ Երկնաքաղաքացին ։ 110 ։

---

Digitized by Google

# Բ. ԿԻՐԱԿԷ. ԱՁ
## ՁԿՆԻ ՎԱՐԴԱՎԱՌԻ

---

ՑԱՌԱԻՕՏՈՒ

ՀԱՐԵ ԲՁ. Անապական Բանդ. իւր սուրբէն: 602:

---

ՑԵՐԵԿՈՑԻ ՀԱՄԲ. ԱՁ. Բ. փառք յարութեան: 28:

---

# Բ. ԵՐԿՈՒՇԱԲԱԹԻ. ԱԿ
## Ս. Սահակայ եւ Յովսեփայ

Ի ԳԻՇԵՐԻ ՕՐՀ. ԱԿ. Յամենայն ժամ օրհնեմք: 54:
ՑԱՌԱԻՕՏՈՒ ՀԱՐՑ ԳՁ. Ուք զտանջանս յանօրի: 91:

---

# Բ. ԵՐԵՔՇԱԲԱԹԻ. ԲՁ

Ս. Երկոտասան Մարգարէից Ովսէի, Ամովսայ, Միքիայ, Յովելեայ, Աբդիու, Յովնանու, Նաւումայ, Ամբակումայ, Սոփոնիայ, Անգեայ, Զաքարիայ, Մաղաքիայ

Ի ԳԻՇԵՐԻ ՕՐՀ. ԱԿ. Որ զաստուածային զօրաւ: 881:
ՑԱՌԱԻՕՏՈՒ ՀԱՐՑ ԴՁ. Որ ընդ հողեղէն: 884:
ՄԱՆԿՈՒՆՔ ԴՁ. Որ զյառաջագոյն ընտրեալ: 887:
ՑԵՐԵԿՈՑԻ ՀԱՄԲ. ԴԿ. Այսօր ցնծայ զուարթ: 886:

---

# Բ. ՉՈՐԵՔՇԱԲԱԹԻ. ԲԿ
## Պահոց

ՑԱՌԱԻՕՏՈՒ ՀԱՐՑ ԱԿ. Զանձառ էութիւն և: 213:

---

# Բ. ՀԻՆԳՇԱԲԱԹԻ. ԳՁ

Ս. Աթանագինեայ եպիսկոպոսին, եւ տասն աշակերտաց նորա, եւ հինգ վկայիցն

Ի ԳԻՇԵՐԻ ՕՐՀ. ԳՁ. Զարհական մահ սրբոց: 65:
ՑԱՌԱԻՕՏՈՒ ՀԱՐՑ ԴՁ. Յուսացեալքն յանուն: 97:

---

Digitized by Google

## Բ · ՈՒՐԲԱԹ · ԳԿ

Պահոց

ՅԱՌԱՒՕՏՈՒ *ՀԱՐՑ ԱԿ. Գոհաբանեմք զքեզ*։ 132։

---

## Բ · ՇԱԲԱԹ · ԴՁ

Ս. վկայիցն Անտոնինոսի, Թէոփիլոսի, Անիկտոսի եւ փոտինոսի

Ի ԳԻՇԵՐԻ *ՕՐՀ. ԴՁ. Այսօր յիշատակ սրբոց*։ 72։
ՅԱՌԱՒՕՏՈՒ *ՀԱՐՑ ԴՁ. Սուրբ ես Տէր զօրու*։ 98։
ՅԵՐԵԿՈՅԻ *ՀԱՄԲ. ԱՁ. Սուրբ ես Տէր։ Երկնա*։ 110։

---

## Գ · ԿԻՐԱԿԷ · ԴԿ

ԶԿՆԻ ՎԱՐԴԱՎԱՌԻ

---

ՅԱՌԱՒՕՏՈՒ

*ՀԱՐՑ ԲԿ. Որ յերկնային զինուոր։ Իւր աւրօրն*։ 622։
*ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԲԿ. Ուրախ լեր մայր լուսոյ*։ 222։

---

ՅԵՐԵԿՈՅԻ *ՀԱՄԲ. ԴԿ. Բ. Էջ հրեշտակն*։ 48։

---

## Գ · ԵՐԿՈՒՇԱԲԱԹԻ · ԱՁ

Ս. Մակաբայեցւոցն եղիազարու քահանային եւ եօթն եղբարցն, եւ մօր նոցա Շամունեայ

Ի ԳԻՇԵՐԻ *ՕՐՀ. ԱՁ. Ժողովեալքս ի յիշա*։ 50։
ՅԱՌԱՒՕՏՈՒ *ՀԱՐՑ ԴԿ. Առ քեզ Աստուած*։ 101։

---

## Գ · ԵՐԵՔՇԱԲԱԹԻ · ԱԿ

Ս. Սոփիայ եւ երից դստերացն Պիստիսի, Ելպիսի եւ Ագապեայ

Ի ԳԻՇԵՐԻ *ՕՐՀ. ԱԿ. Յամենայն ժամ օրհնեմք*։ 54։
ՅԱՌԱՒՕՏՈՒ *ՀԱՐՑ ԴԿ. Որ զհրաշափառ քո*։ 102։
*ՄԱՆԿՈՒՆՔ ԵՒ ՀԱՄԲԱՐՁԻ ԴԿ. Յիշատակ*։ 829։

---

Digitized by Google

# Գ. ՉՈՐԵՔՇԱԲԱԹԻ. ԲՋ

Պահոց

ՅԱՌԱՒՕՏՈՒ ՀԱՐՑ ԲՋ. Օրհնեալ Տէր Աստուած։ 225։

---

# Գ. ՀԻՆԳՇԱԲԱԹԻ. ԲԿ

Ս. Քրիստափորի վկային եւ երկուց կանանցն Կալինիկեայ եւ Ակիւլինեայ

Ի ԳԻՇԵՐԻ ՕՐՀ. ԲԿ. Շնորհեա մեզ Քրիստոս։ 62։
ՅԱՌԱՒՕՏՈՒ ՀԱՐՑ ԱՋ. Ջքեզ արդար և ուղիղ։ 80։

---

# Գ. ՈՒՐԲԱԹ. ԳՋ

Պահոց

ՅԱՌԱՒՕՏՈՒ ՀԱՐՑ ԲՋ. Որ Թագաւորդ ես։ 134։

---

# Գ. ՇԱԲԱԹ. ԳԿ

Եփեսոսի Ս. ժողովոյն երկերիւր հայրապետաց

Ի ԳԻՇԵՐԻ

ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԳՋ

Այսօր սըրբոց հայրապետացըն ժողովեալք ի միա-
սին. եդին հաստատութեամբ ըզհիմունըս հաւատոյ. ի
վերայ հիման առաքելոց և մարգարէից։ Այսօր ըզ-
Բանն ի սկըզբանէ քարոզեցին սուրբ հայրապետքն.
յառաջ քան զյաւիտեանս ի Հօրէ ծընունդ անճառ.
արարիչ գոլով յաւիտենանց ընդ Հօր էակից Հոգւոյն։
Այսօր զՀոգին ճըշմարտութեան դաւանեցին սուրբ հայ-
րապետքն. ծագումն առ ի Հօրէ յառաջ բըղխեալ ան-
համաբար. ընդ Նըմին յաւէտ մըշտընջենաւոր փառա-
կից Որդւոյ։

✝ Ժողովեալ սուրբ հայրապետքըն հրաւիրմամբ Հոգ-
ւոյն սըրբոյ. վերըստին հաստատեցին զառաքելական
քարոզութիւնն. ի վերայ միմի հաւատոյ հիման սուրբ

Digitized by Google

եկեղեցւոյ։ Որք զինու Հոգւոյն սրբոյ արիաբար պա-
տերազմեալք. վանեցին զընդդիմամարտ մոլութիւն հեր-
ձուածողացն. որպէս հովիւք քաջք հերքեցին ըզգայլսն
ի հօտէ գառանց։

ԳՐԻ. Այսօր տօնէ եկեղեցի ուրախութեամբ ըզյի-
շատակ սրբոյն Գրիգորի. որով լուսաւորեալ պայծա-
ռացաւ վայելչապէս. եւ հանդերձս յոսկեհուռս զար-
դարեալ եւ պըսակեալ. Օրհնեցէք մանկունք զՔրիս-
տոս Թագաւորն։ Այսօր ցընծան նորածնեալ որդիք
լուսոյ յիշատակաւ սուրբ Լուսաւորչին. որով հրաւի-
րեցան ի հարսանիսն անապականն. մըտանել ընդ
փեսային երկնաւորի ի յառագաստըն լուսեղէն. Օրհ։
Այսօր քահանայք հոգեւոր պատարագին ըսպասաւորք
վերապատուեն ըզքահանայապետըն սուրբ. որով եր-
կնային քահանայութեանցըն հաղորդեալք. յոր վե-
րափոխեալ այսօր մըտանէ ի սրբութիւն սրբոց միշտ
բարեխօսել առ Տէր վասըն մեր. Օրհ։

ՆԵՐՍ. Այսօր զուարճացեալ տօնեն երկնայինքն
ընդ մարդկան. պարակից եղեալ փըրկութեան մերոյ.
քանզի յայտնեցաւ մեզ հոգեւոր գանձըն լուսոյ. ա-
րեւելեան արեգականըն ճառագայթ սուրբըն Ներսէս.
բարեխօսութեամբ սորա Տէր մեր պարգեւեա զխաղա-
ղութիւն Հայաստանեայց աշխարհի։ Այսօր վերըստին
Նորոգեցաւ քահանայական գաւազանն. գեղեցկապէս
ծաղկեալ պայծառութեամբ. քանզի շնորհեցաւ հովի-
ւըն քաջ բանաւոր հօտի. յաթոռոյ Լուսաւորչին բող-
բոջ բուսեալ սուրբըն Ներսէս. բարեխօսութեամբ սո-
րա Տէր մեր հաստատեա զիշխանութիւն հայրապետա-
կան աթոռոյ։ Այսօր մեծապէս փառօք ցընծայ թա-
գաւորական գաւազանն. ընդ հաշտութեան սիրոյ

Digitized by Google

սուրբ հայրապետին. քանզի եհաս ի յօգնութիւն օ-
րինադրողըն թագաւորաց. մարտակից զինուորական
դասուն սուրբըն Ներսէս. բարեխօսութեամբ սորա
Տէր բարձրացո զիշխանութիւն թագաւորական
աթոռոյ։

ՑԿԲ. Հայրապետ սուրբ եւ անբիծ և ընտրեալ յօ-
րովայնէ. սքանչելագործ վկայ եւ պարծանք ազգի
մարդկան. || առ. Քրիստոս բարեխօսեաց վասն մեր քո
տօնողացս։ Հովիւ հոգեւոր բանաւոր հօտի. լուսաւո-
րիչ տիեզերաց սիւն լուսոյ կանգնեալ ի մէջ եկեղե-
ցւոյ. առ։ Հաստատութիւն հաւատոյ պսակ ի գլուխ
եկեղեցւոյ. պայծառ քարոզ տիեզերաց և պարծանք ազ-
գի մարդկան. առ։ Ի տաճարի քում սրբութեան եր-
կրպագեմք քո Նըշխարաց. փառաւորեմք զօր յիշա-
տակի կատարման քո հանդըստեան. առ։

ՄՐՏ. Զանմարմնոցն ըզմաքրութիւնսըն մարմնական-
կրիւք. տարեալ ի յանձինս իւրեանց քաջ եւ յաղթօղ
երանեալ սուրբ հայրապետք. || սոցա բարեխօսութեամբ
ողորմեա մեզ Աստուած։ Շընորհազարդ և պայծառ
առաքինութեամբ. հերքեցին զիշխանն անօրէն իւ-
րեանց գործակցօք Ճըգնող հայրապետք. սոցա։ Հրեշ-
տակք երկնից փափագին հանդիսի կատարման սոցա.
որք ի մահուն իւրեանց կենդանացան. եղին ի կա-
մարն երկնից խառնեցան ի գունդ զըւարթնոցն. սոցա։

ՀԳ. Որ ի թեւըս թեթեւս. աննիւթ սաւառնեալ ե-
հրացայտըդ սերովբէից վերանըստեալ տեսչութեամբ
խնամես զարարածս. || Հոգի Աստուած սուրբ. օրհնեալ ես
յարարածոց քոց։ Որ սքանչելապայծառ. հրաշա-
ձայնիւ ընդ Հօր և ընդ Որդւոյ միշտ փառաբանիս. ե-
քաղցրութեամբ հայիս յարարածս. Հո. Այսօր աստուա-

ծայրին տեսչութեամբ. ի վերնատանն հընչեալ հողմա-
ձայն հընչմամբ. եւ զառաքեալսն արբուցեալ բաշխեցար
յարարածս. Հռ:

Հն. Արարչագործ Աստուած. զարարածըս քո մի
անտես առներ. այլ գըթա ի || ննջեցեալըն ըմեր
եւ հանգո ընդ սուրբըս քո. ի խորան քում սիրո-
ղաց: Արարչակից Հօր Որդի. ի միւսանգամ քո
գալըստեանն. անդատապարտ պահեա ըզննջեցեալ-
սըն: Կենդանարար սուրբ Հոգի. յորժամ նորոգես
զերեսս երկրի. նորափետուր զարդարեա ըզննջե-
ցեալսըն:

Մտ. Սուրբ զԱստուածածինն. օրհնութեամբ մե-
ծացուցանեմք: Աւետաւոր հրեշտակն աւետարանէր.
ըզծընեալն փըրկիչն ի սուրբ կուսէն: Ասէ ուրախ
լեր բերկրեալդ. քանզի Տէր տերանց է ընդ քեզ:

Իջ. Այսօր ուրախացեալ ցընծան երկընից բազ-
մութիւնքն. ի նաւակատիս սուրբ եկեղեցւոյ. քան-
զի շնորհեցաւ մեզ քահանայապետ յաւիտենից. ի
լուսաւորել զկաթուղիկէ սուրբ զեկեղեցի. || փառս.ծ-
ուըք գալըստեան քո Տէր: Այսօր սիւն լուսոյ հովա-
նի եղեւ ըմեզ ի բարձանց. քանզի թագաւորն եր-
կնաւոր եկաւորէ ի սուրբ եկեղեցի. եւ զօրք
հրեշտակաց ծաւալեալ տօնեն ընդ մարդկան. փա:
— Փառք Հօր: Այսօր քահանայապետ ճըշմարիտ աս-
տուածային օրինօքըն պատուեալ. կանգնէ ըզքա-
ռանկիւն սեղան խաչին. անժանապէս պատարագեալ
բաշխէ զմարմին եւ զարիւնըն Տեառն. մաքրապէս
մերձեցարուք փըրկեալըք նոր ժողովուրդք. եւ հայ-
ցեցէք ի Քրիստոսէ զի շնորհեսցէ ըզսա մեզ ընդ եր-
կայն աւուրս:

Digitized by Google

—Այժմ և միշտ։ Ե՛ւ զհաւատոյս ճըշմարիտըս սուրբ Երրորդութեանն. ընդհանուր քարոզեցին յեկեղեցիս ուղղափառաց. հաւատալ ի Հայր և յՈրդի և յամենասուրբ Հոգի։

ՅԱՐԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԳՁ

Ո՞ր էիր յառաջ քան զյաւիտեանս անըսկիզբն Որդի. ի յերկնից կամաւ Հօր իջեր ի փըրկութիւն աշխարհի. ‖ օրհնեալ ես Տէր Աստըւած հարցըն մերոց։ Ո՞ր զանճառելի ծածկեալ խորհուրդ անպարագիր աստուածութեանդ. հարսին եկեղեցւոյ ցուցեր ի ձեռըն սուրբ հայրապետացն. օրհնեալ։ Ո՞ր իմանալի աստուածային ծագմամբ ի շնորհաց Հոգւոյդ լըցեալք. լըցին ըզտիեզերըս հաւատով Երրորդութեանդ օրհնեալ։

Գ. Ըզ Տէր օրհնեցէք և բարձր արարէք ըզնա յաւիտեան։ Ե՛կայք լուսաւորեալ ժողովուրդք հեթանոսաց. ի ձեռըն լուսափայլ բըղխմանն յորդառատ վըտակաց բանի երանելի հայրապետացն. օրհնեցէք և բարձր արարէք ըզհայրն երկնաւոր։ Որք զանհասանելի տնօրէնութիւն նորգործեալ Բանին յաշխարհ. ծանուցին տիեզերաց անհաս գոլով յարարածոց. օրհնեցէք և բարձր արարէք զՔրիստոս թագաւորն։ Որք հրաշալի զօրութեամբ Հոգւոյն սըրբոյ. ըզխաւարն անգիտութեան յաշխարհէ փարատեցին. և ուղիղ հաւատոյ հիմամբ հաստատեցին զեկեղեցի. քահանայք և պաշտօնեայք օրհնեցէք և բարձր արարէք սուրբ զՀոգին ճըշմարտութեան։

ՄԵԾԱՑՈՒՑԷ ԳՁ

Աստուածածին երկնային դուռն աստուածային։ 379։

ՈՂՈՐՄԵԱ ԳԶ

Աստուածային ճառագայթ որ ի Հօրէ մեզ ծագեցար. եւ լուսովդ քո լըցեր ըզտիեզերս ի ձեռըն սուրբ հայրապետացն. || աղօթիւք սոցա Քրիստոս ողորմեա մեզ։ Որք անբաժանելի ըզմիութիւն Երրորդութեանդ. ընդհանուր քարոզեցին ուղղափառ դաւանութեամբ. աղօթիւք։ Եւ զանճառելի տնօրէնութեանդ քո խորհուրդ. ուսուցին ազգի մարդկան գերագոյն քան ըզքննութիւնս. աղօթիւք։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԳԶ

Հանդիսացեալ ընդ երկնայնոցն այսօր տօնեմք ըզյիշատակ սուրբ հայրապետացն. որք աստուածային առատապէս առընկալեալ շնորհաց բաշխումն. ընդհանուր ծաւալեցին յեկեղեցիս արդարոց. || Օրհնեցէք ըզՏէր ընդ անմարմնոցըն դասս։ Որ բանիւ զանճառելի տնօրէնութիւն Բանին Հօր քարոզեցին. եւ լուսով իմանալեաւ զարդարեցին ըզտիեզերս. ի շնորհըս պանծալիս երկնաձիր պարգեւացն. օրհ։ Որք անձնաւոր զէութիւն բղխեցելոյն ի Հօրէ Հոգւոյն սըրբոյ դաւանեցին. եւ նոյնագոյ բնութեամբ Հօր եւ Որդւոյ հաւասարեալ. անորիշ բաժանմամբ համագոյն միութեամբ. օրհ։ Այսօր անպատում գերազարդեալ փառօք պայծառացաւ սուրբ եկեղեցի. բարձրաձայն հընչմամբ աւետարանչացըն Սիոնի. յառագաստ հրաւիրելով զմանկունս երկնաւոր փեսային. օրհ։

ՄԱՆԿՈՒՆՔ ԳԶ

Ով հրաշալի նախահարք միշտ յաղթողք ի մարտի. որըք գումարեցայք ի Նիկիա գումար. դասք երջանիկ դիտողացըդ եզաբանից. որըք մաքրեցէք զո-

զերկերորդ Հայրապետացն տօնիցեն անդադար։ Եւ է յաւելուլ շաբաթուն, կիրակէին, չորեքշաբաթուն և ուրբաթուն նոյն պայազէ պար։

# Դ· ԿԻՒՐԱԿԷ· ԴՋ

## ՑԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԲԿ

*Անսկիզբն Աստուած և ամենակալ*։ Իւր տարօքն։ 626։

ՑԵՐԵԿՈՅԻ ՀԱՄՐ. ԴՋ. Բ. *կանանցն կանխելով*։ 45։

# Դ· ՉՈՐԵՔՇԱԲԱԹԻ· ԱԿ

## Պահոց

ՑԱՌԱՒՕՏՈՒ ՀԱՐՑ ԲՋ. *Օրհնեալ Տէր Աստուած*։ 225։

# Դ· ՈՒՐԲԱԹ· ԲԿ

## Պահոց

ՑԱՌԱՒՕՏՈՒ ՀԱՐՑ ԲԿ. *Արարիչ և մարդասէր*։ 136։

Եւ դարձեալ ժամեր, չէ լաւ ճշերոցը, ճաշ տալէ յոր յայս մէջոց մի շաբաթ առաջ հանդիպի, և ճաշ տալէ յորում աւելի, մինչ է մեծ շաբաթու։ Վասն որոյ յայսմ ամի և անոր ըստ առաջին չնշանելի. դա այսպիսեաց քարոզ է մօտ նաւ երկու առաւօտ յայսմ և երկու շՑորտանեան Համբարձման, չէ չնդարեւ։

# ԿԻՒՐԱԿԷ

## ԲԱՐԵԿԵՆԴԱՆ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ

ՑԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԴՋ

*Փառաւորեմք զքեզ Տէր Աստուած*։ Իւր տարօքն։ 643։

# ԵՐԿՈՒՇԱԲԱԹԻ

## Պահոց

ՑԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԲՋ

*Ո՛ր ապրեցուցեր զերիս մանկունս ի՛ հնոցին. եւ՛ւ*

Digitized by Google

զխս ամպրեցոյ յահագին հրոյն ‖ Տէր Աստուած հարցըն մերոց։ Որք երգով օրհնութեամբ ըզհուրն ի ցօղ փոխեցին. եւ զթագաւորըն յամօթ արարին. ընդ նոսին օրհնեմք ըզքեզ Տէր։ Աստուած հարցըն մերոց գովեմք ըզքեզ և առաւել բարձրացուցանեմք որ զՄիածինդ առաքեցեր փրկել ըզմեզ. Տէր։

Գ. Ըզ Տէր օրհնեցէք ‖ Միաբանութեամբ տուք փառս եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան։ Որ ի բարձունս բնակեալ է ըզխոնարհս տեսանողին. միաբանութեամբ։ Քահանայք եւ պաշտօնեայք երիտասարդք եւ կուսանք. անդադար զԱստուածածին աստուծոց գովեցէք. եւ բարձր։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԲՁ

Զքեզ կոյս և մայր և բնակարան աստուածային։ 603։

ՈՂՈՐՄԵԱ ԲՁ

Անիրաւութից քըննող գաղտնեաց բըժըշկեա զհոգւոյ իմոյ զհիւանդութիւն ‖ եւ կեցո. միայն մարդասէր։ Ով երկայնամիտդ ես առ ամենեսեան ողորմեա անձին իմոյ բազմամեղի եւ կեցո։ Ամենաբաւական ողորմութեան չընորհս պարգեւեա ինձ յահագին աւուրն ըզթողութիւն եւ կեցո։

ՏԷՐ ՑԵՐԿՆԻՑ ԲՁ

Օրհնեմք ըզքեզ անըսկիզբըն Հայր. յամենայն ժամ օրհնութիւն ի բարձունս։ Գովեմք ըզքեզ միածին Որդի. յամենայն ժամ գոհութիւն ի բարձունս։ Բարեբանեմք ըզքեզ սուրբ Հոգի. յամենայն ժամ փառք քեզ Աստուած։

Digitized by Google

# ԵՐԵՔՇԱԲԱԹԻ

## Պահոց

### ՅԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԲՁ

Որ անհաւոր քոյով զօրութեամբ. յօդըս ցօղաւորըս փոխեցեր ըզբոց հնոցին. || ըզքեզ օրհնեմք անդադար Աստուած հարցըն մերոց։ Որ ըզծառայս քո զվըտանգեալըս ի հնոցին պահեցեր անապական. ըզքեզ ծանուցեր արարիչ եւ Տէր գոլով. ըզքեզ։ Ընդ երանելի մանկանցն երգեսցուք ի նեղչաց մերոց փըրկեա ըզմեզ. եւ մի խափան մատներ զի գինք արեան քո եմք. ըզքեզ։

Գ. ԸզՏէր || օրհնեցէք եւ առաւել բարձր արարէք ըզնա յաւիտեան։ Զանբաժանելի սուրբ զԵրրորդութիւնն արժանաւոր ձայնիւ գովելով օրհնեցէք։ Զերկըրպագեալըն յամենայն արարածոց համաբնական ձայնիւ բարեբանելով օրհնեցէք։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԲՁ

Բանն առաքեալ ի Հօրէ. որ վասն մեր մար։ 610։

ՈՂՈՐՄԵԱ ԲՁ

Բազում են քո գըթութիւնքըդ բազմամեղ անձին իմոյ || ողորմեա Աստուած քաւիչ իմ։ Զի քեզ անյիշաչար Տէր մեղայ չարեն խաբմամբ ողորմեա։ Ի քո ի միւսանգամ դալըստեանըն յորժամ գաս դատել զերկիր. ողորմեա։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԲՁ

Օրհնեսցուք և գովեսցուք առաւել բարձր արասցուք. եւ բարեբանեսցուք զանուն քո || Փրկիչ քեզ վայելէ փառք։ Հրեշտակք եւ մարդիկք և ամենայն արարածոց լեզուք. ըզքեզ միայն օրհնեն Փրկիչ։ Եր-

Digitized by Google

կնոյին զօրութիւնքն անդադար օրհնութիւն մատուցա-
նեն քեզ Փրկիչ քեզ վայելէ փառք ։

---

## ՉՈՐԵՔՇԱԲԱԹԻ

### Պահոց

ՅԱՌԱՒՕՏՈՒ ՀԱՐՑ ԲՁ. Ուղիղ են ճանապարհք ։ 226։

---

## ՀԻՆԳՇԱԲԱԹԻ

### Պահոց

### ՅԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԲԿ

Հարցըն մերոց օրհնեալ ես Տէր. եւ փառաւորեալ
յաւիտեան ։ Մի՛ ցրեր զուխտըս քո մի մերժեր ըզ-
մեզ յողորմութենէ քումմէ ։ Բարձր արարածոց զա-
նուն քո սուրբ թագաւոր հզօր եւ պաշտելագործ ։
Գ. Ըզտէր ‖ Գործք քո օրհնեն ըզքեզ. եւ առաւել
բարձրացուցանեն ։ Որ ըզհուրըն շիջուցեր եւ զման-
կունսն ապրեցուցեր. գործք ։ Զարհուրեալ արքայն ընդ
տեսիլ հրաշալին. ձայնէ ամեր. Եկայք արարա-
ծառայքդ Աստուծոյ. զի եւ ես ընդ ձեզ օրհնեմ
զթագաւորն անմահ ։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԲԿ

Զքեզ Աստուածածին որ վերօրհնիս ի զօրաց ։ 230։

ՈՂՈՐՄԵԱ ԲԿ

Յամենայն ժամ. աղաչանք իմ այս են ամէն.
ի մեղաց իմոց սուրբ արա զիս Տէր ։ Յանցանաց ի-
մոց զարհուրի սիրտ իմ ամէն. աղաչեմ ըզքեզ թող
ինձ Տէր ։ Արտասուաց իմոց մի լըռեր Տէր ամէն.
զի պանդուխտ եմ ես յանցաւոր երկրի ։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԲԿ

Միաբանութեամբ տուք փառս ի բարձունս . թա-

զաւուրն յաւիտենից ։ Զի նա փառօք է փառաւորեալ . ի յերկինս եւ ի յերկրի ։ Լուսաւորեա Տէր զանձինս մեր . լուսատու տիեզերաց ։

---

# ՈՒՐԲԱԹ

## Պահոց

ՅԱՌԱՒՕՏՈՒ ՀԱՐՑ. Հանգստեան ըստ պատշաճի ասա ։

---

# ՇԱԲԱԹ

## Տօն Շողակաթին

### Ի ԳԻՇԵՐԻ

ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԳՁ

Ուրախ լեր սուրբ եկեղեցի . քանզի Քրիստոս արքայն երկնից . այսօր պճնակեաց ըզքեզ խաչիւն իւրով . եւ զարդարեաց զամուրըս քո սքանչելի փառօքն իւրովք ։ Խընդա յոյժ դուստր Սիոնի . քանզի երկիրս երկինք եղեն . այսօր վերըստին քո նորոգմամբ . եւ թագաւորն երկնաւոր հաճեցաւ բընակիլ ի քեզ ։ Ընդ դասս երկնաւոր զօրացըն վերառեալ տօնեմըք քեզ այսօր զանդադար փառատրութիւնս . ուրախ լեր հարսն անարատ անքըննելին քո խորհըրդով ։

✝ Խորան սըրբութեան կանգնեցաւ սուրբ եկեղեցի . եւ Քրիստոս թագաւորն ի սմա պատարագեալ . եկայք հաւատացեալք երգեսցուք Քրիստոսի երգ նոր ։ Դասք հրեշտակացըն վայր իջեալ յերկնից երգեն ասելով . հրաշալի ձայնիւն եղանակելով . երգեն զերգս օրհնութեան երրեակ սըրբասաց ձայնիւ ։

Այսօր հրեշտակաց բազմութիւնքըն տօնակից լինին ընդ մեզ . քանզի երկնաւոր թագաւորն եկաւորէ ի սուրբ եկեղեցի ։ Խընդա եւ զուարճացիր հարսնացեալըդ յԱստուծոյ եկեղեցի . քանզի ըզքեզ Տէրըն տերանց ըն-

արքայից և հանգուցածոյ բնակել ի քեզ։ Լուսաւորեա լուսաւորեա կաթողիկէ եկեղեցի. քանզի ի քեզ շող աստուածեղէն իջ Հօրէ լուսոյ ծագեաց. և լուսաւորեաց զզաւակունս քո։

Որք արժանաւորեցայք ի կոչումն փառաւորութեան Քրիստոսի Աստուծոյ մերոյ. եկայք ժողովուրդք երգեցէք Տեառն երգ նոր. և օրհնեցէք զանուն նորա ձայնիւ ցնծութեան մի յօրհնութիւն ի նմա։ Զօրացեալք ի քեզ Քրիստոս ժողովուրդք հաւատացելոց. ճշմարիտ խոստովանութեամբ օրհնեմք զխորհուրդ աստուածային կենարար տնօրէնութեան քո. փառաւորելով զահաւոր և ընդաքանչելի անուն քո. Տէր Տէր մեր ի վերայ ամենայն երկրի։ Ուրախ լեր եկեղեցի սուրբ. հարսն երկնաւոր խորհրդոյն ի փառս ամենասուրբ Երրորդութեանն. որ համագոյ էակութեամբն իւրով. զարդարեաց ծաղկամբ լուսոյ պայծառ պաճուճեալ զքեզ. ի պատուածէ ամենայն [illegible] սրբովք ի [illegible]։

ՏԴ. Լուսաւորեա Երուսաղէմ զի հասեալ է լոյս քո. զարդարեա զամուրս քո. և փառք Տեառն ի վերայ քո ծագեցին։ Օրհներգութեամբ սաղմոսիւք քեզ վայելէ Աստուած օրհնութիւն ի Սիովնէ. և քեզ մատուցանի աղօթք յԵրուսաղէմ։ Գովեա Երուսաղէմ զՏէր. և օրհնեա զԱստուած քո. ով նոր ժողովուրդ դշխոյ դստեր Սիովնի։

Այսօր աստուածութիւնն զուարճանայ նոր հաստատելով զերկիր. պարք սուրբ փառաբանեն զմարմնոյ. և մեք ձայնիւ օրհնութեամբ զարդարեսցուք սուրբ ըն-տօնս։ Այսօր և մեք ցնծամք տօնիւս ընդհանուր հրճուանօք. մեծապէս փայլմամբ երեւեցաւ յաշխարհի. և Աստուած գոհութիւնք ընծայեն պատմեն անզուգակ

զբան կենդանի ։ Խնդա և զուարճացիր եկեղեցի . կոյս սուրբ և հարսն երկնաւոր փեսային . ահա տեսանեմք զօծեալն ըզՔրիստոս գոլով առ քեզ լոյսն հեթանոսաց ։

ԱԳ. Որ արարեր զօրութեամբ զիմանալեացն աշխարհ վերին. և ի նմա հաստատեցեր տնտես ըզպետըս հրեղինացն. ‖ Օրհնեմք զանհասանելի զօրութիւնդ։ Որ տիրապէս մեծատունդ ստեղծեր երկրորդ աշխարհ զգալի. և ի դրախտն որ յադենի տնտես եդեալ զմարդն առաջին. օրհնեմք ։ Որ շինեցեր բարձրագոյն զեկեղեցի քո խորհրդեամբ. և ի սմա կարգեալ տնտես զքահանայս բանին ճշմարտութեան . օրհնեմք։ Անտանելւոյն տաղաւար բարձրոյ էիցըս բարձրոյին . որ ծընար զԱստուած մարմնով զանմարմնաբար ծնունդըն Հօր. բարեխօսեա վասն մեր Աստուածածին Մարիամ ։

ՀԳ. Որ ի թեւըս թեթեւս. աննիւթ սաւառնեալ և հրացայտըդ սերովբէից վերանըստեալ տեսչութեամբ խնամես զարարածս. ‖ Հոգիդ սուրբ. օրհնեալ ես յարարածոց քոց ։ Որ սքանչելապայծառ . հրաշալի ձայնիւ ընդ Հօր և ընդ Որդւոյ միշտ փառաբանիս . և քաղցրութեամբ հայիս յարարածս. Հո։ Այսօր աստուածային տեսչութեամբ . ի վերնատունն հընչեալ հողմաձայն հընչմամբ. և զառաքեալսն արբուցեալ բաշխեցեր յարարածս . Հո ։

ՀՆ . Որ երկայնամիտդ ես Տէր. քաղցր և անոխակալ հանգո զհոգի քո ծառայից. ‖ զի մի դարձցի տնանկ ամաչեցեալ յաւուրն ահեղ ատենին ։ Զյիշատակ հրաժարելոցն ի հաճոյս քեզ ընկալցիս . և զուխտըս մեր ընկալ որպէս զԱբելին գնոյն և զԱբրահամուն . զի ։

ի վերայ առաքելական վիմի. երգել ի սմա ծ զերգըս հոգեւորս։ Կանգնեալ ի սմա սեղան սրբութեան. բաշխէ զմարմին իւր և զարիւն. եւ տայ ի սմանէ մեզ նորոգութիւն. ի թողութիւն մեղաց մերոց։ Իջեալ Հոգւոյն սրբոյ. աղաւնակերպ երեւմամբ. ի վերայ մարմնոյ եւ արեանըն Տեառն. ի բժշկութիւն հոգւոց մերոց։

### ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԴՁ

Լուսաւորեա Երուսաղէմ. զարդարեա զամուրըս քո. քանզի մերձեցաւ առ քեզ փեսայն երկնաւոր փրկութեան քեզ շնորհելով պսակեալ ծնց անանցելի փառօքն իւրովք։ Այսօր ծագեաց քեզ դըշխոյ դուստըր Սիոնի. արդարութեան արեգակըն Քրիստոս եւ սփռեցան ըզքեզ շնորհըք սուրբ Հոգւոյն մեծապէս պարգեւօք։ Այսօր ցընծա սուրբ Սիոն մայր եկեղեցի. փայլեցո զմանկունըս քո որպէս զարեգակն. զի անճառ խընդութեամբ լըցոյց ըզքեզ Քրիստոս թագաւորն։

**Առաւօտու Երգ. Տան քում վայելէ։ Տէր թագաւորեաց։**

**Քարոզ Ասասցուք։**

### ՄԱՆԿՈՒՆՔ ԴԿ

Էջ Միածինն ի Հօրէ եւ լոյս փառաց ընդ Նըմա. ձայնիւք հընչեցին սանդարամետք անդընդոց։ Տեսեալ ըզլոյս մեծ հայրապետին Գրիգորի. պատմէր ցընծութեամբ հաւատացեալ ազգային. Եկայք շինեսցուք սուրբ ըզխորանըն լուսոյ. քանզի ի սմա ծագեաց մեզ լոյս ի Հայաստան աշխարհի։

**Ջնջէ Մանկանցն Քար. Սուրբ եկեղեցեաւս։ Կեցո. Յոյնէ։**

**Աղօթ. Առ դրան սուրբ տաճարիս։**

### ՑԵՐԵԿՈՑԻՆ

*ՄԵՍԵԴԻ* Աստ օրհնեցէք: Ո կայք: Քարոզ Առաստացուք:

Ես է համբարձին չքեննան մեռեան տանանայն, և յարեան ե- լանեն խուչ և աւետարանաւ, ընկօք և մարդիկնօք և աւէն

*ՀԱՄԲԱՐՁԻ ԴՁ.* Այսօր ժողովեալ: Ո—ն տան: Ի վ—յ:

Զհնէ Քար. Վաստն խաղ: Աղ. Հայր գթած: Ես ա—ն

*ՀԱՐՑՆ ԴՁ.* Որ զնախամօրն: Ի—ր տարօքն: 954: Քար. Սուրբ զԱստուածածինն: Կեցո. Յոյնե: Աղ. Ընկալ Տէր: Հայր մեր:

---

# ԿԻՒՐԱԿԷ
## ՓՈԽՈՒՄՆ
# Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ

### Ի ԳԻՇԵՐԻ
#### ՀԵՏԵՒԱԿ ՇԱՐԱԿԱՆ ԴԿ

Այսօր զանճառելի ծննդեան քո Տէր. Եբեք տան: 961: Քարոզ Եւ ես խաղաղ: Քահ. Օրհնութիւն և փառք:

Ես այս չքեննան մեռեան և յարեան ելանեն խուչ և աւետար- նաւ, ընկօք և մարդիկնօք և ամենայն զօրքօք:

#### ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԴՁ

Այսօր ժողովեալ սրբոցն ի միասին. երանելի առաքեալքն եւ սուրբ կուսանքն. ջահազգեստաւք պայծառացեալ լուցանէին ըզլապտերս իւրեանց. եւ միաձայնեալ ասէին. օրհնեալ ես. ամենօրհնեալդ ի կանայս: Այսօր դնելով ըզսուրբ կոյսն առ դրանն գերեզմանին. սպասէին և սպասէին Տեառն իւր ի Նքենին գալով. գեր ի վերոյ տեսեալ զմարմինն եկեալ բազում հրեշտակօք. եւ նոցա միա: Այսօր սեսեալ ըզսուրբ կոյսն թագուցեալ յօդս. եւ ամպեղէն կառօքն ի վեր համբարձեալ յերկինս. մտանելով յերկնային խորանսն ընդ իմաստուն կուսանսն. եւ նոցա: Այսօր ընդ բազմաչեալ քրովբէսն եւ ընդ վեց-

Digitized by Google

թեւեան սրովբէսն. մըտանելով յեօթնաստեղեան խորանսն. տեսանելով զանազան աթոռսըն զոր պատրաստեալ է քեզ տէրունոյդ. երգեմք և մեք ասելով. օրհնեալ:

† Այսօր զազատիչըն յանցանաց նախամօրն ըզկուսութեանց մայրն. փոխադրեաց Բանն Աստուած յերկնայինսըն դասելով յաստուածակերտ խորանսն և յանպատում ի կեանս. ‖ վասն որոյ հըրճուողական ձայնիւ քեզ երգէ եկեղեցի սուրբ ըզընոր զօրհնաբանութիւն: Այսօր տիրամայր սըրբուհի կոյսն. աւանդեալ ըզսըրբասնեալ հոգին ի ձեռըն հրեշտակական դասուցն. որպէս գերարփի փայլեալ ահեղիցըն նըմանեալ հրեղինաց դասուցն. վասն: Այսօր վերամբարձեալ ըզմաքրական մարմինն Աստուածամօր կուսին. անմարմինըն զըւարթնոցն ամփոփեալ ի տեղի գերակայիցն յերեւելի ըզգայութեանցս անճառիցն ա-նել հաղորդս. վասն:

Այսօր հրաշափառ կոչմամբ Հոգւոյն ժողովեալ սըրբոց առաքելոցն և իմաստուն սուրբ կուսանացն. պայծառացեալք իմաստութեամբ ի յերկնային փոխումն Աստուածամօրն. ‖ և համաձայնեալք անմարմնոցն. օրհնէին զամենօրհնեալ Սըրբուհին: Այսօր տեսեալ հրակերպ դասուք վայր իջեալ յերկնից զՈրդին միածին. արփիափայլ հրաշալի փառօք. գերապայծառ մաքրեալ հոգւոյն յաւանդումն ամենասուրբ ծընողին իւրոյ. և համա: Այսօր ըզքնակարան Հոգւոյն սըրբոյ վերնական հրաբուն սեռիցըն փոխադրեալ յերկինս. մըտանելով ի վերինն Երուսաղէմ. ի յաւագամատն անապականն յանմըտանելին եղականացս ընդ Երրորդութեանն. և համա:

Digitized by Google

Այսօր ընդ նախամօրն երկանց բարձողըն կուսական ծննդեամբ զանհարսնացեալ մայրն. Միածնին իջեալ փառօք փոխադրեաց յիմանալի և յանպատում գերագոյն բնութիւնս. Վասն որոյ սրովբէական ձայնիւ քեզ երգեմք սրբութեանց սուրբ. ընդ միշտ փառաբանութիւն: Այսօր ընդ հողեղէն բնութիւնս տեսեալ հրեղինացըն սոսկացեալ դողան. մարմին հրանիւթ կառօք յանմարմնոց վերաբերեալ ի յերկնային և յաննմանորյ լուսեղէն խորանս. Վասն: Այսօր տօնակից հոգեղէնաց զօրօք հարսնացեալ եկեղեցի սուրբ. տօնէ ուրախութեամբ ընդ յիշատակ անապական աննարատ կուսին Աստուածամօրն. Վասն:

Որ ի բարձրութիւնս երկնից բարձր բանիւք բարեբանիս Սըրբուհի. ի Սիօնանէ դիմեալ հարսն զգեցեալ այսօր զարեգակն արկեալ ընդ քեւ և ընդ ոտիւք զլուսինն ստուերատեսակ. Օրհնութեամբ երգով եկեղեցիք տիեզերաց այսօր տօնեն ընդ յիշատակ ծննդեան քո ի մօրէ: Վեհագոյն սերովբէից և բարձրացեալ քերովբէից տիրամայր Աստուածածին. տապանակ կտակի սափոր ոսկի խորհրդական խորան նորին հօր բարձրելոյ. օրհնութեամբ: Մարգարէից հանդիսարան և գրաւական կենաց մարդկան Մարիամ Աստուածամայր. ընդ անարատն եօթնարփին շնորհացն խարիսխ յուսոյ հաստատութեան զուգութիւ աւուրց դարուցս մնայորաց. օրհնութեամբ:

Ուրախ լեր Մարիամ սուրբ Աստուածածին. զի ի տաճարին մաքրեցելոյ յանկարծակի եկըն Տէր. Ընդ քեզ օրհնութեամբ մեծացուցանեմք: Ուրախ լեր դուռն փակեալ ընդ որ ոչ ոք մըտեալ. բայց Տէր Աստուած Իսրայելի. ընդ քեզ: Ուրախ լեր աղբիւր կնքեալ ջրոյն

կենդանութեան . զոր ծարաւելոյ բնութեանս ետուր ի յարբումն . ընդ քեզ :

Մայր լուսոյ Մարիամ սուրբ կոյս . որ ընկալար անդ ի Հօրէ ծնունդ մարմնով . եւ եղեր արեւելք արեգական արդարութեան . || Հոգեւոր երգով ըզքեզ ուր- բուհի մեծացուցանեմք : Քերովբէից գերագոյն էիր աթոռ . եւ ծառ կենաց անմահական պտղոյն . տապանակ կրօնակիր բանին եւ սափոր ոսկի երկնային մանանային . Հոգեւոր : Քեւ բացաւ սրովբէափակ դուռն դրախտին . եւ քեւ տուաւ մեզ փայտն անմահութեան . զոր ի նմա զենեալն անմահ այսօր յերկնից լուսաւորեաց . Հոգեւոր :

Անարատ կոյս Աստուածածին Մարիամ սրբուհի եւ մայր Քրիստոսի . յարգանդի տարար զանտանելին ամենեցուն . || Օրհնութեամբ ըզքեզ Աստուածածին մեծացուցանեմք : Ըզքեզ երկնային դուռն զոր ետեսն Եզեկիէլ . եւ ասրըն զոր ծանեաւ Գեդէոն . սերովբէ հողեղէն վեհագոյն քերովբէից . Օրհնութեամբ : Երբեմն խորհուրդըս սոսկալիս ի քեզ տեսանի Աստուածածին . յղութիւն անսերմնական ծնունդ անարատ . կուսութիւն յետ ծննդեան մնալով անապական . Օրհնութեամբ :

Հգ. Առաքելոյ աղաւնոյ . ի ձայնելով մեծաձայն հնչմամբ ի բարձանց . ի նմանութիւն լուսոյ փայլման հրազինեաց անկիզելի զաշակերտսն . մինչդեռ նըստէին ի սուրբ վերնատանն : Աննիւթական աղաւնի . անքննելի որ քննէ զխորս Աստուծոյ . զոր առեալ ի Հօրէ պատմէ զահաւոր եւ ըզմիանգամ գալուստն . զոր քարոզեցին համագոյական : Օրհնութիւն ի բարձունս . Ելողին ի Հօրէ Հոգւոյն սրբոյ . որով առա-

քեալքն արբեցեալն անմահական բաժակաւն. եւ հրաւիրեցին զերկիրս ի յերկինս։

Հն. Հայր անըսկիզբըն արարիչ յաւիտենից առ քեզ կարդամք և պաղատիմք | հանգուցանել զննջեցեալսն մեր ի սուրբ անանցելդ քո։ Որդիդ միածին. համակից Հօր և Հոգւոյ ի միաւանգամ քո պայծառութեանն հանգուցո։

— Փառք Հօր։ Հոգիդ ճշմարիտ. փառակից Հօր և Որդւոյ. աղաչանօք Աստուածածնին հանգուցո։

— Այժմ և միշտ։ Այսօր յուսապատար խնդութեամբ եւ յանճառ հնչմամբ. նուագեմք քեզ հողեղէնքս ընդ հրաբորբ սերաբիցն. աննախընթերձեալ զյե-չանտան կուսի աղախնոյ եւ մօր քո. փառս տալ հրե-ղինակաւն ձայնի քեզ երգէ եկեղեցի սուրբ ընդերձ զօրհնաբանութիւն։

Ալէլուիա Ծննդեան է յայնմն.

### ՅԱՌԱՒՕՏՈՒ
### ՀԱՐՑ ԴՁ

Որ ըզնախամօրըն զյանցանս երկանցն եբարձ. եւ զՈրդիդ քո միածին. մարմնով ծնար. այսօր առ ի մէնջ ի վերին զօրացըն փոխեցեր զնախաստեղծին ծը-նունդըն | զոր միշտ աւետիմք բարեխօս. առ քեզ Տէր Աստուած հայցըն ը մերոց։ Որ էակիցդ ես Հօր եւ սուրբ Հոգւոյն. մարմնանալ ի յանձն առեր ի սըր-բոյ կուսէն. այսօր փոխադրեալ դասեցեր. յերկ-նային խորանսն ըզքոյին ծնողըն զոր։ Որ յաւիտենա-նի ես լըցուցիչ բարեխնամ սուրբ Հոգի. այսօր պար-գեւօք հանգուցեր յանպատում ի կեանս ըզկուսու-թեանց ըզմայրըն զոր։

Գ. Ըզտէր օրհնեցէք բարձր արարէք ըզծընող ան-տանելի Բանին ըզմիշտ կոյսն։ Որ ի կուսական դա-

Digitized by Google

սակցութեանց և ի սըրբոց ճըգնաւորաց փառաբանիս Սըրբուհի. ուստի և մեք հաւատացեալքս. վերապատուեմք ըզփոխումըն քո ի յերկինս ‖ որ առաւել բարձրացեալդ ես յամենեսեան։ Զբարեբանեալդ անդադար միշտ ի վերին զօրաց. և ըզվերափոխեալդ ի դասս առաքելոց և մարգարէից. ընդ որս և մեք հաւատացեալքս. վերապատուեմք ըզքոյին Աստուածամայր ըզհանգըստեան տօնս որ։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԴԶ

Խորանայարկ կամարանըման յօրինեցար սուրբ կոյս Աստուածածին. զանհասանելին զԲանն Աստուած բնաւորապէս անսերմնաբար կրեցեր ի քում յորովայնի. ‖ անդադար երգով ըզքեզ ը միշտ մեծացուցանեմք։ Դուռն երկնից ըզծագումն անճառելի անապական որ ի Հօրէ առաքեցաւ. ի գիրկըս քո բարձեալ կրեցեր դիեցուցանելով մարմնացելոյն ի քէն ըզկուսական քո սուրբ ըզկաթն. անդադար։ Տեղափոխեալ ըզքեզ ի վերնական ի կառըս քերովբէական Աստուածամայր. սպասաւորեալդ ի սերովբէից և երկըրպագեալդ յանմարմնական զօրաց. անդադար։

Ի ԳԻՇԵՐԻ ԳԱԼՍՏԵԱՆ

Դասք լուսեղէն զուարթնոցն սպասէին մեծի գալըստեանն Տեառն։ Ե. մւ երգէին երգ նոր. օրհնեալ է քո սուրբ գալուստդ։

ՈՂՈՐՄԵԱ ԴԶ

Որ ունիս իշխանութիւն մահու և կենաց. Քրիստոս թագաւոր փառաց ‖ ողորմեա մեզ Աստուած։ Տօնելով ըզյիշատակ կուսին Աստուածորդւոյ մօր. հըրճուին հրեշտակք ի յերկինս. և ցընծան դասք առաքելոց և մարգարէից ընդ կուսական տօնս. ողոր-

մեա՛։ Քե՛զ միածնո՛յ մօ՛ր եւ կուսի․ մաղթեմք հայ-ցելով ի՛ քէն․ բարեխօսեա՛ անդադար առ որդին քո և Աստուա՛ծ մեր․ փրկել զմեզ ի փորձութենէ եւ յա-մենայ՛ն վտանգի՛ց մերո՛ց։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԴՁ

Անըսկիզբն Աստուած անհասանելի բնութեան և հանգուցեալ ի հրեղէն կառս․ վասն որոյ գովելով ա-սեմք․ օրհնեալ ես Հայր անըսկիզբն Աստուած։ Մար-գարէատեսիլ և ծիրանազգեաց հրաշափառագոյն նոր-գոր առեալ Որդւոյ վերափոխեալ դասեաց յանապատում ի կեանս․ վասն որոյ գովելով ասեմք․ օրհնեալ ես Որդիդ միածին Աստուած։ Անհասանելի Հոգւոյն զօ-րութիւնն․ որով փրկեալ համատարած լոյսն ըղկա-կան անձամբն․ վերափոխելով յանպատմելի և յանհա-սանելի և յանանց լոյսն․ վասն որոյ բարեբանելով ա-սեմք․ օրհնեալ ես Հոգիդ ճշմարիտ Աստուած։

Առաւօտու Երգ․ Արի Տէր ի հան։ Յիշեա Տէր զԴաւիթ։ Քարոզ Մայր սուրբ։

Զնի Սուրբ Աստուածին Մաղ․ Փրկել։ Քար․ Վասն լսել քահ․ Օրհնութիւն։ Եւ եղանէն է պայծառ խաչէն և ամէն-րանա, ընկօք և մանկանց և ամենայն զօրութեամբ, ամէն։

ՇԱՐԱԿԱՆ ԴՁ

Այսօր ժողովեալ սրբոցն ի միասին։ Զօրս ձայն։ 950

ԶՆԻ ՍԱՂՄՈՍ ՃԼԱ․ է ՐԽ

ԿԸ․ Արի Տէր ի հանգիստ քո, դու և տապանակ կը-տակի սրբութեան քո։

ՓԽ․ Յիշեա Տէր զԴաւիթ, և զամենայն հեզութիւն նորա։

Որպէս երդուաւ Տեառն, և ուխտս եդ Աստուծոյ Յա-կոբայ։

Թէ ոչ մտից ի յարկս տան իմոյ, թէ ելից յանկողի-նըս մահճաց իմոց։

*Թէ տաց քուն աչաց իմոց, կամ նինջ արտեւանաց իմոց, կամ հանգիստ իրանաց իմոց, մինչեւ գտից զտեղի յարկի Տեառն Աստուծոյ Յակովբայ։*

*Ահա լուաք զնմանէ յԵփրաթայ, և գտաք զնա ի դաշտըս մայրեաց։*

*Մտցուք ի յարկս նորա, երկիր պագցուք ի տեղւոջ ուր կացեալ են ոտք նորա։*

*Արի Տէր ի հանգիստ քո, դու և տապանակ կտակի սրբութեան քո։*

*Երիցունք քո զգեցցին զարդարութիւն, և սուրբք քո ցնծալով ցնծասցեն։*

*Վասն Դաւթի սիրելւոյ քոյ, մի՛ դարձուցաներ զերեսս քո յօծելոյ քումմէ։*

*Երդուաւ Տէր Դաւթի ճշմարտութեամբ և ոչ ստեաց նմա, ի պտղոյ որովայնէ քումմէ նստուցից յաթոռ քո։*

*Թէ պահեսցեն որդիք քո զօրէնս իմ, և զվկայութիւնըս իմ զոր ուսուցից նոցա։*

*Որդիք նոցա նստցին յաւիտեանս յաւիտենից յաթոռ քո։*

*Հաճեցաւ Տէր ընդ Սիովն, և ընտրեաց բնակել ի նըմա. ասէ, այս է հանգիստ իմ յաւիտեանս յաւիտենից, ի սմա բնակեցայց զի հաճեցայ ընդ սա։*

*Զորս սորա օրհնելով օրհնեցից, և զաղքատս սորա լցուցից հացիւ։*

*Երիցանց սորա զգեցուցից զփրկութիւն, և սուրբք սորա ցնծալով ցնծասցեն։*

*Անդ ծագեցից զեղջիւր ի Դաւիթ, պատրաստ արարից զճրագ օծելոյ իմոյ։*

*Թշնամեաց նորա զգեցուցից զամօթ, այլ ի վերայ նորա ծաղկեսցի սրբութիւն իմ։*

*Ալէլուիա, ալէլուիա։*

Ընթերցուած յԵրգոց երգոյն Սողոմոնի : Դ. 9:

*Սրտակաթ արարեր զմեզ, քոյր մեր հարսն, սրտակաթ արարեր զմեզ միով ակամբ քով, և միով քառամանեկաւ պարանոցի քոյ։ Քանզի գեղեցկացան ստինք քո, քոյր իմ հարսն, քանզի գեղեցկացան ստինք քո ի գինւոյ, և հոտ հանդերձից քոց քան զամենայն խունկս։ Մեղր կաթեցուցանեն շրթունք քո, քոյր իմ հարսն, մեղր*

և կաթն ի ներքոյ լեզուի քոյ, և հոտ հանդերձից քոց իբրև զհոտ կնդրկի: Պարտէզ փակեալ, քոյր իմ հարսն, պարտէզ փակեալ և աղբիւր կնքեալ: Պատգամաւորութիւն քո դրախտ նռնենեաց՝ հանդերձ պտղովք մրգաբերաց. կիպրոս հանդերձ նարդոսիւ. նարդոս և քրքում, խունկեղէգն և կինամոմոն, հանդերձ ամենայն ծառոք Լիբանանու. զմուռս և հալուէ, հանդերձ ամենայն գլխաւոր խնկովք: 14:

Ընթերցուած յեսայեայ մարգարէէ: Է. 10:

Եւ յաւել Տէր խօսել ընդ Աքազու՝ և ասէ. խնդրեա դու քեզ նշան ի Տեառնէ Աստուծոյ քումմէ ի խորութեան կամ ի բարձրութեան: Եւ ասէ Աքազ. ոչ խնդրեցից՝ և ոչ փորձեցից զՏէր: Եւ ասէ. արդ լուարուք տուն Դաւթի. թեթև՞ ինչ թուիցի ձեզ աշխատութիւն հասուցանել մարդկան, և զիա՞րդ հասուցանէք՝ աշխատութիւն Տեառն: Վասն այդորիկ տացէ ձեզ Տէր ինքնին նշան: Ահա կոյս յղասցի և ծնցի որդի, և կոչեսցեն զանուն նորա Էմմանուէլ: Իւղ և մեղր կերիցէ. մինչ չև ինչ իմ ծանուցեալ նորա կամ ախորժեալ յառաջագոյն զչարութիւն, ընտրեսցէ զբարին: Վասն այնորիկ մինչ չև ծանուցեալ իցէ մանկանն զբարի կամ զչար, անարգեսցէ զչարն և ընտրեսցէ զբարին. և մնասցէ երկիրդ՝ յորմէ դուդ կասկածես յերեսաց երկուց թագաւորացն: 16:

Պօղոսի առաքելոյն ի Գաղատացւոց թղթոյն է ընթերցուածս: Գ. 29:

Ապա թէ դուք Քրիստոսի էք, ուրեմն Աբրահամու զաւակ էք, ըստ աւետեացն ժառանգք: Զայս ասեմ. զոր քան ժամանակս ժառանգն տղայ է, չէ ինչ տարբեր քան զծառայն, թէպէտ և տէր իցէ ամենեցուն. այլ ընդ հազարապետօք է և ընդ գաւառապետօք՝ մինչև ի ժամանակակէտ հօրն. Նոյնպէս և մեք մինչ տղայքն էաք, ընդ տարերբք աշխարհիս ի ծառայութեան կայաք: Այլ իբրև եկն լրումն ժամանակին, առաքեաց Աստուած զՈրդի իւր՝ որ եղև ի կնոջէ, և եմուտ ընդ օրինաք. զի զնոսա որ ընդ օրինաքն իցեն՝ գնեսցէ, զի մեք զորդեգրութիւն ընկալցուք: Եւ զի էք դուք որդիք, առաքեաց Աստուած զՀոգի Որդւոյն իւրոյ ի սիրտս մեր, որ աղաղակէ աբբա հայր. այսուհետև չես ծառայ, այլ որդի. եթէ որդի և ժառանգ Աստուծոյ: Դ. 7:

Digitized by Google

Զայնիւ Ալէլուիա . ալէլուիա . ալէլուիա .

Հոգին սուրբ եկեսցէ ի քեզ, և զօրութիւն Բարձրելոյն հովանի լիցի ի վերայ քո :

Ալէլուիա, Օրթի

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու : Ա . 26 :

Ի Հօրէն ամենակալէ

Եւ յամսեանն վեցերորդի առաքեցաւ Գաբրիէլ : 297 :

Քարոզէ սարկաւագն Եւ ևս խաղաղ : Վասն ի վերուստ :
Եւ փէտանաքրեն ընթերցուածն և շարաշարքս :
Զկնի Քարոզ Սուրբ խաչիւս : Աղօթ+ Պահպանեա :

Եւ է դառնալն յեկեղեցին, սկսանին

ՇԱՐԱԿԱՆ ԴՁ

Այսօր զաղատիչն յանցանաց նախա : Զօր. դառն : 951 :
Զկնի . Նորաս : Քար . Խնդր : Կեցո . Յայնժ : Աղ . Քում ամե :

---

ՑԵՐԵԿՈՅԻՆ

Ի դուռն ժամն ժողովին է դուռն եկեղեցւոյն, և սկսանին
Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս, ամէն . Հայր մեր :

ՍԱՂՄՈՍ ՃԼԱ . է Բէ

Կ8 . Արի Տէր : Փխ . Յիշեա Տէր զԴաւիթ : 956 :
Գէբ+ շարաօղեանն նորոգ :

Զայնիւ Ալէլուիա . ալէլուիա . ալէլուիա .

Հոգին սուրբ եկեսցէ ի քեզ, և զօրութիւն Բարձրելոյն հովանի լիցի ի վերայ քո :

Ալէլուիա, Օրթի

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու : Ա . 39 .

Տերամբ մերով Յիսուսիւ Քրիստոսիւ

Յարուցեալ Մարիամ յաւուրսն յայնոսիկ՝ գնաց ի լեռնակողմն փութապէս ի քաղաքն Յուդայ, և եմուտ ի տուն Զաքարիայ, և ետ ողջոյն Եղիսաբեթի : Եւ եղև իբրև լուաւ զողջոյնն Մարիամու Եղիսաբեթ, խաղաց մանուկն յորովայնի նորա : Եւ լցաւ Եղիսաբեթ Հոգւով սրբով, և ի ձայն բարձր աղաղակեաց և ասէ . օրհնեալ ես դու ի

Digitized by Google

կանայս, և օրհնեալ է պտուղ որովայնի քո. և ուստի՞ է
ինձ այս՝ զի եկեսցէ մայր Տեառն իմոյ առ իս։ Զի ահաւա-
սիկ իբրև եղև ձայն ողջունի քո յականջս իմ, խաղաց ցըն-
ծալով մանուկս յորովայնի իմում. և երանի որ հաւատայ-
ցէ՝ եթէ եղիցի կատարումն ասացելոցս նմա ի Տեառնէ։
Եւ ասէ Մարիամ. Մեծացուսցէ անձն իմ զՏէր, և ցնծա-
ցաւ հոգի իմ յԱստուած փրկիչ իմ. զի հայեցաւ ի խոնար-
հութիւն աղախնոյ իւրոյ։ Զի ահա յայսմ հետէ երանես-
ցեն ինձ ամենայն ազգք. զի արար ինձ մեծամեծս հզօրն.
և սուրբ է անուն նորա, և ողորմութիւն նորա ազգաց յազ-
գըս երկիւղածաց իւրոց։ Արար զօրութիւն բազկաւ իւ-
րով, ցրուեաց զամբարտաւանս մտօք սրտից իւրեանց.
քակեաց զհզօրս յաթոռոց, և բարձրացոյց զխոնարհս։
Զքաղցեալս լցոյց բարութեամբ, և զմեծատունս արձա-
կեաց ունայնս։ Պաշտպանեաց Իսրայէլի ծառայի իւրում
յիշել զողորմութիւնս, որպէս խօսեցաւ առ հարս մեր
Աբրահամու և զաւակի նորա յաւիտեան։ Եկաց Մարիամ
առ նմա իբրև ամիսս երիս, և դարձաւ ի տուն իւր։ 56

Եւ իջանեն խաչն և աւետարանն և ամենայն դասքն
ի դուռն, ասելով

ՇԱՐԱԿԱՆ ԴՋ

Այսօր ժողովեալ սրբոցն ի միասին։ Զօրս դասն։ 95

ՁՆԻ ՍԱՂՄՈՍ Դ. ձայնիւ

Ալէլուիա. ալէլուիա.

Կ8. Նշանեցաւ առ։ Փխ. Ի կարդալ իմում։ 435

Ալէլուիա Օրթի

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Յովհաննու։ ԺԹ. 25։

Վասն խաչելութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի

Եւ կային առ խաչին Յիսուսի մայրն նորա, և քոյր
մօր նորա Մարիամ Կղէովպայ, և Մարիամ Մագդաղենացի։
Յիսուս իբրև ետես զմայրն և զաշակերտն զոր սիրէր՝ զի
կայր մօտ, ասէ ցմայրն. կին դու, ահա որդի քո։ Ապա
ասէ ցաշակերտն. ահա մայր քո։ Եւ յայնմ ժամանակէ
առ աշակերտն զնա առ իւր։ Յետ այսորիկ իբրև գի-
տաց Յիսուս, եթէ ահա ամենայն ինչ կատարեալ է. զի
կատարեսցի գիրն՝ ասէ, ծարաւի եմ։ Եւ անօթ կայր ...

ման ինչ լի քացախով. և նոցա սպունգ լցեալ քացախով ընդ լեղւոյ՝ շուրջ եդեալ զմշտկաւ զոպայի, մատուցին ի բերան նորա : Իբրև առ Յիսուս զքացախն հանդերձ լեղւովն՝ ասէ. ամենայն ինչ կատարեալ է : Եւ խոնարհեցուցեալ զգլուխ՝ աւանդեաց զոգին : 30 :

Եւ փոխանակ երգեն զանդաստանն և զաշխարհս :

Ձայնէ քարոզ. Սուրբ խաչիւս : Աղօթք Պահպանեա :

Եւ է դառնալն յեկեղեցին Սարկաւագն քարոզէ Եւ ևս խաղաղութեան : Քահանայն Օրհնութիւն և փառք Հօր :
Եւ սկսանին զերեկոյի ժամն, և ասեն Խոնարհեցո և Ապրեցո :
ՄՆՍՆԴԻ Մանկտեան. Տէր ասաց : Ընդէ՞ր խռովեցան :
Քարոզ Մայր սուրբ :

ՀԱՄԲԱՐՁԻ ԴՁ . Այսօր զազատիչն : Ջուր տես : 951 :
Ձայնէ Համբարձման քարոզ. Վասն խաղաղ : Աղ. Հայր գթած :
Եւ ապա շարականս ասեր զայսն ասեն Նախատօնակ ասելով .

ՇԱՐԱԿԱՆ ԴԿ

Այսօր զանճառելի ծննդեան քո : Իւր տեղւոյն : Ի վերջ :
Ձայնէ քարոզ. Սուրբ զԱստ : Կեցո. Յայնի : Աղ. Ընկալ Տէր :

---

# ԵՐԿՈՒՇԱԲԱԹԻ

## Բ. ՕՐ ՓՈԽՄԱՆ

---

### Ի ԳԻՇԵՐԻ

#### ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԴԿ

Այսօր զանճառելի ծնընդեան քո Տէր ընդպատասխանիր խորհրդոյ. ի հողանիւթ գոյացութեանց փառաւորեցեր յերկինս : Այսօր զանտանելի Բանիդ բարձրագոյն ընդ քերովբէն հողեղէն. բարձրացուցեր ի ստորնայնոցս զերանակայիցըն կայանս : Այսօր զանապական կոյսն որ ընդ քեզ մաքուր կաթամբ կերակրեաց . ի զգայական փոխեալ բնութեանց յիմանալեացըն խորանս :
✝ Լոյսն անքննին ծածկեալ ի ծոց Հօր . որ ծագեցաւ ի քէն մայր և կոյս . այսօր իջեալ ընդ անմարմնա-



Digitized by Google

կան դասուք հրեղինացըն փոխանորդեալց ըղձեց լուսա-փայլ ամպովք. իօ լոյսն անըստուեր։ Բանն անմար-մին որ ի քէն մարմնացաւ. եւ ի գիրկըս քո բարձեալ կրեցաւ Մարիամ. այսօր եկեալ բարգաւաճութեամբ դա-րաք հրեշտակացըն վերանցելոց ըղձեց հրաւիրել կանաչ. իօ լոյսն անըստուեր։

Արեւելք գերարփին եւ օթարան լուսածին. զան-մայր ծընեալն առաջին ծընար անհայր յերկրորդին. Բարեխօսեա Միածնին Աստուածածին մայր Բանին։ Բանին Հօր մարմնարան եւ տաղաւար բնակութեան. որ կաթամբ կուսական կերակրեցեր զէակըն Բան. բարեխօսեա։ Գերագոյն սըրբութեամբ եւ կուսական մաքրութեամբ. բարձեր զանհասըն բնութեամբ ի գիր-կըս քո սըրբընդեամբ. բար։ Դու ծաղիկ անթառամ տոհմի սեռիս մարդկութեան. եւ շառաւիղ օրհնութեան. Նախնոյ ծնողին մեր բնութեան. բար։ Երկնաւոր արքային եղեր տաճար ըստ երգողին. յանկարծակի փեսային ի յառագաստ բազմեալ քոյին. բար։ Զօր երկնից անմարմնոց իմանալեացըն զըւարթնոց. իջեալ յերկնից ի յերկիր սպասաւորել մեծ արքային. բար։ Լիրցս էակ Բանըն Հօր պարագրեցաւ ի մարմնի. լոյ-սըն ծընունդ ծոցածին էառ զբնութիւն նախաստեղծին. բար։ Ընտրեալ յառաջ քան զհիմունս ի սկըզբանէ աշխարհի. տումար անճառ անքննին եւ ամպ թեթեւ լուսածին. բար։ Թագ հիւսեալ երկնային յեռեալ յա-կանց անմարմին. բերեալ պըսակ սուրբ կուսին յոր-ժամ փոխէր յաշխարհ վերին. բար։ Փողփողեալ սուրբ գընդին երկոտասան դասուց խըմբին. ոլոցեալք որ-պէս զարծուին յԵրուսաղէմ քաղաք մեծին. բար։ Իջ-եալ բազմութիւն աշակերտաց Նորոյ կտակին. ի փո-

Digitized by Google

խաւմն Աստուածածնին մարգարտափայլ սրբոյ կուսին. բար: Լոյս ի լուսոյ Հօր ծագածին իջեր յերկնից յաշխարհ ստորին. դասք անմարմնոց ընդ քեզ իջին ի պատիւ մօր քո եւ կուսին. Ներբողեալ զայս ասէին դու ես տաճար անեղ Բանին: Խորին խորհուրդ անքըննին ծածկեալ յազգաց յաւիտենին. յայտնեցաւ յամըս վերջին ի փրկութիւն մարդկան սեռին. զոր տեսանողքըն ծանուցին կուսին ծընող լինել Բանին: Ծածկեալ խորհուրդն յաւիտենին լըռեցելոյ և անճառին. ի հասանել ժամանակին պարգեւեցաւ մարդկան ազին. Էական բնութիւն Բանին. խառնեալ անշփոթ ի մեր բնութիւն: Կատարեալ տնօրէնութեան քո ի յերկրի ներմարդկութեան. զոր ի վերջին դարուս վախճան կատարեցեր վասըն մարդկան. այսօր յերկնից իջեր Հօր Բան ի յոր կուսի մօր քո նընջման: Հոյլք վերին զօրացն իջեալ շուրջ ըզկուսիւըն պար առեալ. զերգս օրհնութեան եղանակեալ քաղցըր ձայնիւ ակումբ առեալ. զեռահիւսեակըն նըւագեալ զմի տէրութիւնն երգաբանեալ: Ձայնակից նոցին եղեալ դասք երջանիկ պետացն ընտրեալ. ի Հոգւոյն վերաբերեալ որք յընդհանուր աշխարհ սփռեալ. անմարմնոցն համաձայնեալ ըզկոյսըն սուրբ օրհնաբանեալ: Ղամբաբափայլ ջահիւք լուցեալ սուրբ կուսանացըն գումարեալ. զերգս օրհնութեան նըւագեալ ի պատիւ մօրն ամենօրհնեալ. բարեբանեալ ես կոյս գովեալ յորմէ Աստուած Բանըն ծընեալ: Ճառագայթ Հօր ծագածին յորժամ ելեր առ Հայր յերկինս. խոստանայիր բանիւ քոյին ի կատարումն Աստուածածնին. քեզ միայնոյ զօրաց քոյին գալ ի փոխումըն միշտ կուսին: Մարգարիտ լուսափայլ Հոգւոյն սրբոյ տուն եւ տաճար. մարգարէից

Digitized by Google

բանք նախահաճա այսօր լըցան ի քեզ զուամբ․ Մովսէս դասուքն իւրովք մնացա ի պատիւ քո անդ ողլանայր։ Ցամամարեալ ձայն ներբողի յուրախութեան օր քո տօնի․ հանդերձ նորոգ ներբողի առաքելոց դասուց խմբի․ աւանդեցեր զքո սուրբ զհոգիդ ի ձեռն Որդւոյ քո միածնի։ Նորանոքանչ անդ հրաշից ներանկերպեալ ի յերկրի․ քանզի պայծառ քան զարփի փայլեալ սըրբոյ կուսին հոգի․ զոր զարհուրեալ Պետրոսի զՏէր հարցանէր զխորհուրդն յայտնի։ Շնորհազարդ փառօք փայլեալ որպէս ըզմայր քո միշտ զովեալ․ ի մարդկանէ ով քատանկեալ հոգւով պայծառ արփւոյ նմանեալ․ որպէս փայլակըն բորբոքեալ յերկնաւորաց վերաբերեալ։ Ով Պետրէ լուր ձայնի զոր հարցանես պատասխանի․ լոյս առաջին հայր կոչի եւ յետ նորա որ ի կարգի․ պայծառ զհոգիս մարդկան ստեղծի որպէս ըզմօրս իմ զոր ցուցի։ Զորեքնիւթեայ բնութեամբ խառնեալ շաղկապ ըզչորսն ի մէջ եդեալ․ զոր ի դրախտին զարդարեալ փառօք եդի վայելեալ․ եւ այժմ ըզնոյն ձեզ շնորհեմ արեամբ իմով պայծառ մաքրեալ։ Պար առեալ անմարմնոցըն շնորհազարդ զուարթնոց․ ողջացեալ երկնայնոց զկոյսըն բարձեալ յերկրայնոց․ յոր վերակնեալ առաքելոց զերգս օրհնութեան հընչեն երգոց։ Զահնգեստեալ սուրբ կուսիցն հանդերձ մաքուր դասուց խմբից․ երկոտասան սուրբ զընդից եւ աշակերտօք նոցին բանից․ ձայնակից եղեալ միմեանց եղանակեն զերգս օրհնութեան։ Ուա՜հ լուսոյ սրբութեան հորդեալ զօրաց անմարմնոց․ եւ զունդք հրեղէնք զուարթնոց յառաջընթաց յաշխարհ վերնոց․ հըրձուղական ձայնիւ երգոց զովեն ըզքեզ սուրբքդ սրբոց։ Սերովբէից զունդք հիացեալ յորժամ տեսին ըզՏէրն իջեալ․ ի փոխման

Աստուածածնին անապականն և միշտ կուսին. զարհուրեալ զայս աւէին օրհնեալ ես սուրբ Աստուածածին: Վեհագոյն սերովբէիցն եւ բարձրագոյն քերովբէից. վերամբարձեալ ի բարձունս յեղականացս անհըպելին. փառաւորեալ ընդ Միածնին հըրճուղական ձայնիւ երգոց: Տէրութիւնք և զօրութիւնք իշխանութիւնք և պետութիւնք. հրեշտակապետք եւ հրեշտակք եղանակեն զերգս օրհնութեան. օրհնեալ ես Կոյս տաճար մաքրեալ յորում ստեղծողն էր բազմեալ: Բաբունեացըն խմբից աշակերտացըն դասուց. բարձեալ զմարմինըն մաքուր աստուածարեալ սուրբ բազկաւք. եդին ի դիր հանգըստեան քաղցրաձայնեալ սաղմոսիւք: Ցընծայիցն բերկրանաւք և յորդահոս արտասուաւք. եղանակէին քաղցր երգաւք երեքօրեայ խմբեալ պարաւք. Բարթողիմէ յետոյ եկեալ և զտեսչալին իւր ոչ տեսեալ: Խիթեալ բանից դասուց սըրբոց զըղձումն եղբօրըն վըճարեալ. բացեալ զտապանն ամենօրհնեալ եւ զբաղձալին իւր ոչ գըտեալ. քանզի եղեւ վերափոխեալ ի փառս անճառ նախապատրաստեալ: Փառըք Հօրն էականի պատիւ Որդւոյն իւր էակցի. ընդ Հոգւոյն համազուգի որ զարդարեաց զկոյսն ի յերկրի. ժառանգել զանճառ բարին զոր պատրաստեաց իւր Միածինն: Քանզի անճառ է խորհուրդ փառաց կուսին յանմարմնոց. զոր ի դարուցըս վերջնոց եհեղ մարդկան ստորայնոց. զոր այժմ յուսով բերկրելոց յայնժամ շնորհէ յուսացելոց:

Կերտող բոլոր եղելոց իմանալեաց և ստորայնոց բարուն բարի անմարմնոց առեր պատիւ յերկրայնոց. կուսական տօնիւս փոխման որդեգրութեան լիցուք արժանիս: Վասն որոյ աղաչեմ Աստուածածին մայր Բանին բամեալ զհոգի եւ զմարմին դարձեալ ի սէր փեսային եր-

Digitized by Google

մարմնով ծնեալ ի սուրբ կուսէն. եւ ի խանձարուրս պատեցար որպէս երեխայ եւ ի մսուր հանգեար. այսօր ընծայութեանց ընծայիլդ հանդերձեցեր ի լուսեղէն խորանս. Յաղաչանս մեր քո անճառ մարմնով Որդի Աստուծոյ։ Որ ի քերովբէական աթոռ նստիս ընդ Հօր եւ սուրբ Հոգւոյն. հաճեցար բազմիլ մարմնով ի գիրկս երանելի կուսին եւ կաթնատու եղեր. այսօր քերովբէից վեր համբարձեր յաթոռ փառաց ընդ Հօր եղեր. քերովբէն աղաչանօք։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԴՆ

Այսօր զուարթնացան հրեշտակք ի յերկինս. ընդունելով յերկրէ զմայր Բանին Աստուծոյ յիմանալի խորանս անմահ Հօր։ Այսօր ցնծացան զարդք առաքելոց. տեսանելով զՏէրն տեառն իւրեանց խոնարհեալ յաւանդումն ամենասուրբ Հոգւոյ ընդ մօր եւ կուսին։ Այսօր եւ մանկունք եկեղեցւոյ. ուրախութեամբ տօնեն յերկրի ընդփոխումն կուսին յերուսաղէմ քաղաքն վերին։

Աստուածածնի երգ. Իջցէ որպէս զանձ։ Աստուած գիրաւուն։ Քարոզ Մայր սուրբ։ Ջնջի Սուրբ Աստուածածին. Մաղ. Փրկել։ Քար. Վասն լսելի։ Քան. Օրհնութիւն։ Ես ասա

ՍԱՂՄՈՍ ՀԱ. Յոյնն

ԿՑ. Իջցէ որպէս զանձրեւ ի վերայ գեղման, որպէս ցօղ զի ցօղէ յերկիր։

Փխ. Աստուած զիրաւունս քո արքայի տուր, եւ զարդարութիւնս քո որդւոյ թագաւորի։

Դատել զժողովուրդս քո արդարութեամբ, եւ զաղքատս քո իրաւամբք։

Առցեն լերինք զխաղաղութիւն ժողովրդեան, եւ բլուրք զարդարութիւն։

Իրաւ արասցէ աղքատաց ժողովրդեան, եւ կեցուսցէ զորդիս տնանկաց, եւ խոնարհեցուսցէ զամբարտաւանս։

Կացցէ եւ մնասցէ ընդ արեւու, յառաջ քան զլուսին ազգէ մինչեւ յազգ։

Digitized by Google

Իջցէ որպէս զանձրև ի վերայ գեղման, որպէս ցօղ զի ցօղէ յերկիր ։

Ծագեսցի յաւուրս նորա արդարութիւն՝ բազում խաղաղութիւն, մինչև կատարեսցի լուսինն ։

Տիրեսցէ նա ի ծովէ մինչև ի ծով, ի գետոց մինչև ի ծագս աշխարհի ։

Առաջի նորա նախ Հնդիկք անկցին, և թշնամիք նորա հող կերիցեն ։

Թագաւորք Թարսսի և կղզեաց պատարագս մատուսցեն նմա. Թագաւորք Արաբայ և Սաբայ պատարագս բերցեն նմա ։

Երկիր պագցեն նմա ամենայն թագաւորք երկրի, և ամենայն ազգք ծառայեսցեն նմա ։

Զի փրկեաց զաղքատն ի հզօրէ, զաղքատն և զտնանկն որոյ ոչ է իւր օգնական ։

Անխայեսցէ նա յաղքատն և ի տնանկն, և զանձինս տնանկաց կեցուսցէ, ի վաշխից չարաց փրկեսցէ զանձինս նոցա ։

Պատուական է անուն նորա առաջի նոցա, կեցցէ և տացի նմա յոսկւոյն Արաբացւոց ։

Յաղօթս կացցեն առ նա յամենայն ժամ, և զօրհանապազ օրհնեսցեն զնա ։

Եղիցի հաստատութիւն ընդ ամենայն երկիր, և ի վերայ գլխոց լերանց ։

Բարձրասցի քան զԼիբանան պտուղ նորա, ծաղկեսցի ի քաղաքի Տեառն որպէս խոտ երկրի ։

Եղիցի անուն Տեառն օրհնեալ յաւիտեան, զի յառաջ քան զարև է անուն նորա ։

Ի նա օրհնեսցին ամենայն ազգք երկրի, և ամենայն ազինք երանիցեն նմա ։

Օրհնեալ Տէր Աստուած Իսրայէլի՝ որ առնէ սքանչելիս միայն. և օրհնեալ է անուն սուրբ փառաց նորա յաւիտեան. լցցի փառօք նորա ամենայն երկիր. եղիցի եղիցի ։

Ալէլուիա, Օրթի

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու ։ Ա. 39.

Տերամբ մերով Յիսուսիւ Քրիստոսիւ

Յարուցեալ Մարիամ յաւուրսն յայնոսիկ գնաց ։ 959 ։

Երգ Արարչ ։ Քոբ. Խնդր. Յայնժ— ։ Կեցո ։ Աղ. Քում ամե ։

…րգեմք սըրբութեանց սուրբ . ընդմիշտ փառաբա-նութեան ։ Այսօր ընդհողեղէն բնութեանս տեսեալ հրե-ղինացըն սոսկացեալ դողայ . մարմին հրանիւթ կառօք յանմարմնոց վերամբերեալ ի յերկնային և յանմատոյց լուսեղէն խորանս . վասն ։

Նոր Սիոն ծընեալ մանկունք սուրբ աւազանին . շնորհազարդեալք Հոգւովն Աստուծոյ . օրհնեցէք զՀայրն Երկնաւոր յաւուր ծննդեան սրբուհւոյ կուսին . ‖ յոր օրհնեցայք յանիծից նախնոյն ։ Արեամբ գառինն անարատի փրկեալ ժողովուրդք . յաւուր ծնըն-դեան մօր անտանելւոյն . գովեցէք զՄիածինն որ հաճեցաւ առնուլ մարմին անսերմն ի նմանէ . յոր ։ Յառատաբուղխ շնորհաց Հոգւոյն լուսազարդեալ ազգք հեթանոսաց . յաւուր ծննդեան մօր Բանին ծնո-ղի . ըզփառակից Որդւոյ զՀոգին բարեբանեցէք հո-գեւոր երգով . որ մաքրազարդեաց զմարմնարան Որդւոյն ։

Ուրախ լեր Մարիամ կոյս անապական . զի ի հայ-րականն ծոցոյ անմեկնելի Որդին ի քո յանձն առնու բնակել յորովայնի ։ Ուրախ լեր երկին վեհագոյն քրովբէ հողեղէն . որ զանտանելին երկնից և հրեղի-նաց զառաւելն ի քո ընկալար մաքրական որովայնի ։ Ուրախ լեր սիւն հրեղէն լուսոյն աշտանակ . որ զա-ապրշակմնն եղակմնաց լուսոյ ի քեզ տանելով ծագե-ցեր խաւարելոց ։ Ուրախ լեր սափոր ոսկի երկնային հացին . որ զառ ի վերուստ իջեալ ըզմանանայն կենաց որոյս պարգեւեալ կերակուր Իսրայելի ։ Ուրախ լեր ամպ թեթեւ զեղմն իմանալի . որ ի բանական երկիր հեղեր զանձրեւ կենաց արդիւնս ընդ գործոյ հաւատոյ պտղաբերեալ ։ Ուրախ լեր դուստր լուսոյ մայր ան-

Digitized by Google

հարսնացեալ. քանզի յղացեալն ի քէն համախմբեալ վերնոցն. որդիքն Սիովնի երգեն ըզփառս ի բարձունս:
Ծագումըն հրաշալի որ. անճառ էր ի մէնջ. Եւ Բանըն հայրական անըմբռնելի. հաւր փայլակնացեալ և ի մարմնի բնակեցաւ. անվրդով պահելով զարարածս ամենայն: Ծագումըն հրաշագործ որ ի կուսէն ծագեցաւ. նմանագոյթելով զարարածս ամենայն. Երկինք ցնծային և երկիր ուրախանայր. ի Քրիստոս Աստուած ընդ մարդկան շրջեցաւ: Աւետաւորինիւք ամենասուրբ Հաւր. գերագոյն և հրաշալի եւ բաշխող բարութեանց. աղբիւր ես ծարաւեաց և հանգիստ աշխատելոց. եւ եղեր վերընկալ աստուածային Բանին:

Առաւօտ խաղաղութեան եւ արուսեակ զըւարթաբար. այսօր Մարիամ ուրախանէին ի փառսն քո Քրիստոս ծագեաց մեզ լոյս յորդւոցն օրհնելոց. ‖ Անդադար երգով սրբով ըզքեզ ը մի՛շտ մեծացուցանեմք Դրախտ աստուածային և սրբեւելք իմանալի. Այսօր Մարիամ հրաշագեղ ծնեալ ի յԱննայէ ի բարութիւն քո հրաւիրեալ Քրիստոս Որդի Աստուծոյ. անդադար: Տապանակ ապրեցուցիչ և տաղաւար սըրհամեան աստուածընկալ. այսօր Մարիամ լուսապայծառ միածին ծընունդ յայտնեալ ծնողաց ի ծնողութիւն քո կոչեցեալ միածին Որդի Աստուծոյ. անդադար:

Աստուածածին մայր լուսոյ սուրբ կոյս լուսեղէն տաճար. որում երկինք չէին բաւական. աբնակութիւն ի քէն մարմնացաւ. Ըզքեզ աննմանացեալ որ միայնդ ի կանայս օրհնեալ. կրելով ի քեզ զանտանելի զօրութիւնն. օրհնութեամբ մեծացուց-

եմք ։ Ուրախ լեր աթոռ փրկութեան յոյս հաստատութեան մարդկան . միջնորդ օրհնեաց և շնորհաց . օրհնութեամբ անդադար գոհութեամբ մեծացուցանեմք ։

Ուրախացիր Աստուածածին . որ կուսութեանց ես պարծանք եւ մայր հաստատութեան մարդկան . օգնական և շնորհ աշխարհի Մարիամ մայր և աղախին Փրկչին մերոյ ։ Երանելիդ ամենեցուն զԱստուած ծնանելով ըզքնութեամբ անտանելի զամենեցուն ամենակալն . արժանի եղեր կրել յորովայնի . որ երեւեցաւ ազգի մարդկան ։ Քերովբէական աթոռ ցուցար Աստուածածին . ի գիրկըս բառնալով զԱստուածն ամենեցուն որ նըստին ի քերովբէս . առ նա միշտ բարեխօսեա կեցուցանել ըզմեզ ։

ՀԳ. Անըսկիզբն Աստուած սուրբ հոգի . զմարգարէութեանց նախագուշակումն արտափայլեալ լուսաւորեցեր . ‖ առատապէս հեղեալ յառաքեալսն ։ Անժամանակ Որդի միածին . ըզխոստացեալ պարգեւս առաքեցեր ի վերնատունն առաքելոց լըցեր . առա ։ Ամենակալ Հայր երկնաւոր . զանբաժանելի լոյսդ ըզծագումն հոգեղինացըն շնորհեցեր . առա ։

ՀՆ. Քանզի զքեզ օրհնեն իշխանութիւնք երկնից Թագաւոր փառաց . ամենակալ ամենակարող Թող ըզմեղս մեր ննջեցելոցն ‖ և հանգո ի խորանի քում ի յարքայական ի հանգըստեան ։ Որ ի նախնումն ըզմարգարէն Մովսէս . լուսաւորեցեր աստուածային փառօք ռնալեամբ աստուածութեանդ քո . լուսաւորեա եւ ըզմեր ըզննջեցեալսն և հանգո ։ — Փառք Հօր ։ Բարեխօսութեամբ սուրբ Աստուածածնի ծընողի և մօր քո . ինչեան զգինս արեան քո Տէր . եւ դատաւորեալ յերաւէտ յանթառամ և յանտըրտում ի կեանս . ի յար ։

Digitized by Google

— Այժմ և միշտ։ Այսօր տօնակից հոգեղինաց զուա
հարսնացեալ եկեղեցի սուրբ. տօնէ ուրախութեամբ
ընդ յիշատակ անապական անարատ կուսին Աստուա-
ծամօրն. վասն որոյ սրովբէական ձայնիւ քեզ եր-
գեմք սրբութեանց սուրբ. ընդ միշտ փառաբանու-
թեան։

---

ՅԱՌԱՒՕՏՈՒ
ՀԱՐՑ ԴՁ

Որ զդատակնիք երկանց անիծից նախամօրն եղ-
միածնի Որդւոյ քո ծնընդեամբ կոյսըն Մարիամ. ա-
սօր յառաջին յանպատում փառսըն դարձուցեր տա-
ըզնախաստեղծըն ‖ զոր միշտ ունիմըք բարեխօս. ա
քեզ Տէր Աստուած հարցըն մերոց։ Որ ի Հօրէ
անմարմնաբար ծընեալ Որդի նախ քան զյաւիտեանս
եւ մարմնով ծընար ի սըրբոյ կուսէն. այսօր խ-
նարհեալ յերկնայինսըն փոխեցեր զտնօրէնութեան
զընակարանըն զոր։ Զոր մաքրեցեր ի բնակութե
քում էակցին Հոգւոյդ ճըշմարիտ. եւ լըցեր անճառել
եօթնարփեան շնորհօք. այսօր զերագոյն հրեղինաց
դասեցեր ըզհողեղէն բնութիւնըն զոր։

Գ. ԸզՏէր օրհնեցէք բարձր արարէ՛ք ‖ ըզծածկոյթ
մանալի լուսոյն ըզմիշտ կոյսն։ Որ յանմարմնոց
նուորութեանց և ի դասուց հոգեղինաց վերհամբարձ
այսօր Աստուածամայր. ուստի եւ դասք հողեղինաց
փառաբանե՛մք ըզծածկոյթ։ Որ ի վեցթեւեան որ
բէից եւ ի բազմաչեայ քրովբէից փառաւորեալ եր
Աստուածածին. ընդ որս եւ մեք համաձայնեալ
րեբանե՛մք ըզծածկոյթ։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԴՁ

Աստուածածին զերագոյն երկնից ցուցար խոր

եւ առագաստ. քանզի ծագեալ լոյսն ի Հօրէ բնու-
թեանց էից անտանելին պարագրեցաւ ի քում յորո-
վայնի. ‖ Հոգեւոր երգով ըզքեզ ըմիշտ մեծացուցա-
նեմք: Դուռըն փակեալ զքեզ Եզեկիէլ յառաջագոյն
ծանոյց կոյս անարատ. ընդ որ եմուտ անտեսն յէից.
Բանն անմարմին որ ի Հօրէ եւ ել մարմնով անխախտե-
լի միալով կուսութեանդ. Հոգեւոր: Վերափոխեալ ըզ-
քեզ ի յերկնային խորանսն այսօր Որդիդ քո միածին.
ուստի եւ դասք առաքելոցն եւ իմաստունն սուրբ կու-
սանացըն միաձայնելով գովէին ըզքեզ մայր անհարս-
նացեալ. Հոգեւոր:

ՈՂՈՐՄԵԱ ԴՁ

Որ խոնարհեցար յերկնից. անմեկնելիդ ի Հօրէ Որ-
դի Աստուծոյ եւ առեր մարմին ի սըրբոյ կուսէն
‖ հայցմամբ ծագողին լուսոյդ և մեզ ողորմեա: Որ
մահուամբ քով կեցուցեր ըզմեզ. եւ յարուցեալ համ-
բարձար առ Հայր ի յերկինս. այսօր երկնաւոր զօրաց
իջեր ի փոխումըն մօր քո և կուսի հայցմամբ: Որ
իմանալի խորանսըդ. բարձրացոյց ըզքեզ մայր Աստու-
ծոյ. անճառելի փառօք միածին Որդին առ նա
միշտ բարեխօսեա վասն անձանց մերոց:

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԴՁ

Ուրախ լեր մայր անճառ լուսոյ սուրբ Աստուածա-
ծին. քանզի առ ի քէն ծագեաց մեզ լոյս ի լուսոյ և
խաւարն անգիտութեան փարատեաց անըստուեր լու-
սովն իւրով: Ուրախ լեր կոյս անարատ մայր անհարս-
նացեալ. քանզի որ ի քէն ծընաւ Որդին միածին.
լայր իջեալ յերկնից այսօր վերածեաց ըզքեզ պան-
ելի փառօք: Ուրախ լեր հարսն երկնային կոյս ա-
ապական. քանզի երկնայնոցն ըզքեզ այսօր ընկա-

լեալ տնօրէնին ուրախութեամբ ընդ որս և մեզ եր-գեսցուք քեզ օրհնութիւն Մայր Տեառն:

Առաւօտու Երգ. Արի Տէր ի հանգ: Յիշեա Տէր զԴաւիթ: Քարոզ Մայր սուրբ:

Ջնջ Սուրբ Աստուածածին Մաղ. Փրկել: Քար. Վասն խաղ: Քահ. Օրհնութիւն: Եւ այլն

ՍԱՂՄՈՍ Բ. Յոյժ

Կց. Տէր ասաց ցիս: Փխ. Ընդէր խռովեցան: 437:

Ալէլուիա, Օրհնի

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու: Բ. 1:
վասն ծննդեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի:

Եւ եղև ընդ աւուրսն ընդ այնոսիկ ել հրաման յՕգոստոս կայսերէ՝ աշխարհագիր առնել ընդ ամենայն տիեզերս. այս առաջին աշխարհագիր եղև ի դատաւորութեան Ասորւոց Կիւրենեայ: Եւ երթային ամենեքեան մտանել յաշխարհագիր յիւրաքանչիւր քաղաքի: Ել և Յովսէփ ի Գալիլեէ ի քաղաքէ Նազարեթէ ի Հրէաստան ի քաղաքն Դաւթի, որ կոչի Բեթղեհէմ. վասն լինելոյ նորա ի տանէ և յազգէ Դաւթի, մտանել յաշխարհագիր Մարեմաւ հանդերձ զոր խօսեալն էր նմա, և էր յղի: Եւ եղև ի հասանելն նոցա անդր, լցան աւուրք ծնանելոյ նորա, և ծնաւ զորդին իւր զանդրանիկ, և պատեաց ի խանձարուրս, և եդ զնա ի մսուր. զի ոչ գոյր նոցա տեղի յիջավանին: 7:

Երգ Հրաշալի: Քար. Խնդրես. Յոյժ: Կեցո: Աղ. Քումդ

---

ՅԵՐԵԿՈՅԻՆ

ՄԵՍԵԴԻ Ծննդեան. Իջցէ որպէս: Աստուած զիր-

Քարոզ Մայր սուրբ:

ՀԱՄԲԱՐՁԻ ԴՁ. Այսօր ժողովեալ: Ոտն տան: 950:

Ջնջ Քար. Սուրբ զԱստ: Կեցո. Յոյժ: Աղ. Ընկալ Տէր:

---

Բայց պարտ է յիշել որ տօնել զփոխումն Ս. Աստուածածնի, որ է բարեխօս վասն ամենայն քրիստոնէից. և զսա անդադարձան ի-տալէս:

Եւ այս յիշն օր, յառաւօտուն և յերեկոյին Քար. Մայր սուրբ: Առաւօտու Քար. Խնդրես: Կեցո. Յոյժ: Աղ. Քումդ առն: Երեկոյին Քար. Սուրբ զԱստուածածինն: Կեցո. Յոյժ: Աղօթք Ընկալ:

Digitized by Google

Թող Աստուածարա Երգ, Սաղմոս և Աւետարան զոր պատշէր և ա-
ւետս, զայնոր տաղը կարգեա : Եւ յերեկոյին Համբարձի զերկրորդ
տաղը Օրհնութեանն ասա :

# ՉՈՐԵՔՇԱԲԱԹԻ

## Դ. ՕՐ ՓՈԽՄԱՆ

Ամենայն ինչ շԱ տաղըն ասա 950. բայց է հանդերձ տաղը
պատշաճիցն : Նոյնպէս և յէ տաղը :

# ՀԻՆԳՇԱԲԱԹԻ

## Ե. ՕՐ ՓՈԽՄԱՆ

Ամենայն ինչ շԲ տաղը ասա : 961 :

# ՈՒՐԲԱԹ

## Զ. ՕՐ ՓՈԽՄԱՆ

Ամենայն ինչ շԳ տաղը ասա : 970 :

# ՇԱԲԱԹ

## Է. ՕՐ ՓՈԽՄԱՆ

Ամենայն ինչ շԱ տաղը ասա : 950 :

# Ա. ԿԻՐԱԿԷ

## Ը. ՕՐ ՓՈԽՄԱՆ

Ամենայն ինչ շԲ տաղը ասա : 961 :

# Ա. ԵՐԿՈՒՇԱԲԱԹԻ

## Թ. ՕՐ ՓՈԽՄԱՆ

Ամենայն ինչ շԳ տաղը ասա : 970 :

### ՑԵՐԵԿՈՑԻՆ

#### ՀԱՄԲԱՐՁԻ ԲՁ

Անթառամ ծաղիկ անդամոյ պարտ շառաւիղ.
վերբարձեալ յարմատոյն Ցեսսեայ. զքեզ Եսայիաս
կանխեալ վեր գոչեաց եօթնարփին շնորհաց

Հոգւոյն ընդունարան գոլ. Աստուածածին եւ կոյս | զքեզ ը մեծացուցանեմք: Հա մեզ ամենաչ պըտղոյն բանաւոր ը բարունակ. յորմէ կթեցաւ մեզ ողկոյզն անապական յուրախութիւն տրտմելոց ցնծոյ. ի ճաշակմանէ ծառոյն գիտութեան. Օրհնեալ է անարատ ամենեքեան. զքեզ: Քաղաքդ վերին ի մայր մերն անարատ ը վերուք. այսօր յուսալ-լոյն ամփոփեալ. վերին ակնարկութեամբն վերա-փոխեցար յարքայութիւն. Որդւոյ քո եւ Աստու-ծոյ ը մերոյ. բարեխօս լեր խոստովանողացս. զքեզ:

---

# Ա. ԵՐԵՔՇԱԲԱԹԻ

## Ս. Յովակիմայ եւ Աննայի, եւ կանանցն Իւղաբերից

### Ի ԳԻՇԵՐԻ

#### ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԱԿ

Որ նախիմաց իմաստութեամբ տնօրինեցեր զխոր-հուրդ սուրբ եկեղեցւոյ. խորագոյն արկեալ հի-մունս հաստատութեան ըզդասս արդարոց. Աղաչանօք սոցա խնայեա ի մեզ: Որ զօրհնութիւն նախաստեղ-ծիցն աստուածազգոյգ արուաց եւ իգաց. պայծառացեալ վայելչապէս ծաղկեցուցեր այսօր ի Յովակիմ եւ ի յԱննա. աղաչանօք: Որ ըզխոստումն Աբրահամու նա-հապետին մեր ըստ հոգւոյ. քահանայական եւ թա-գաւորական զաւազանացըն միացեալ ցուցեր այսօր ի յԱննայէ. աղաչանօք:

† Անըսկիզբն Աստուած անճառելի անբաւ զօրու-թիւն. որ յիսկըզբանց յաւիտենից խնամարկեցեր զոր-դիս Ադամայ. գերագոյն այսօր շնորհիւ փայլեալ ցու-ցեր ծընընդեամբ զմայր Միածնիդ քո ընտրելոյ. աղա-չանօք: Որ յանէից բանիւ գոյացուցեր զաշխարհս ա-

մենայն. այսօր մարդասիրեալ տնօրինաբար ի յԱննայէ երկեր հիմունս նորոյ աշխարհի. աղաչանօք ։

ՑՈՎ. Թագաւորըն բոլորից պայծառածկեալ յարգանդի կուսին. զոր ծառայք հաւատարիմ տեսեալ հոգւովըն սըրբով եւ բերանով մօր քո օրհնաբանէին. ‖ առ Քրիստոս բարեխօսեա վասն անձանց մերոց ։ Ժառանգաւոր հին օրինացն արդարութեան ընդ մարգարէիցն. եւ նախաշաւիղ հետեւողաց անձնուկ եա նահապետ օրինացս ընդ առաքելոցն. առ ։ Ի յանապատի հրեշտակական վարուք բնակեցար ըստ Եղիայի. կերակրելով մարախ եւ մեղր վայրենի հին և նոր պատուիրանաց օրինակաւ. առ ։

ՄՐԳ. Որ զաստուածային զօրութիւնըդ քո ծանուցեր հոգւոդ ճըշմարիտ. բաշխելով իշխանաբար ըզպարգեւըն քո տեսանողաց մարգարէիցն ի սկըզբանէ. ‖ բարեխօսութեամբ սոցա խընայեա ի մեզ ։ Որ մաքրեցեր բնակարան աստուածութեանըդ քո սուրբ ըզմարգարէսն. եւ աղբերաբար հեղեր յանձինըս նոցա զանապական եւ զերկնային շնորհաց քոց բըղխումն. բարեխօսութեամբ ։ Որ յայտնեցեր ըզծածկեալ խորհուրդ քոյոց սիրողաց. եւ անճառելեաց ապագայից պատմողս արարեր տնօրէնութեան քում էակցի Բանիդ Աստուծոյ. բարե ։

ԱՒ. Ի յանսահման ծովէն հօր զըթութեանց բըղխմունք. եւ սուրբ առաքեալք. անդրանիկ խորհուրդք և լոյս գերազանց. երկոտասան ազգաց պըսակ սուրբ եկեղեցւոյ. ‖ բարեխօս լերուք առ Տէր վասն անձանց մերոց ։ Աշխարհակերտի Բանին բազկաց եղեալ հիմունք սըրբոյն Սիովնի. լերինք անշարժք հովիւք ծաղկածինք հարազատ վէմք հաւատոյ Պետրոս եւ Անդրէաս. բարեխօս ։ Ի բարեբուն հոգւոյն վըտակք եւ որոտմունք

տիեզերաց. ցոլմունք հրեղէնք աստեղք լուսափայլք. Յիսուսի Թագաւորին վակաս լանջաց սուրբ Յովհաննէս եւ Յակոբոս. բարեխօս լերուք առ Տէր վասն անձանց մերոց :

ՀԱՑՐ. Որ թագաւորաց ազգաց եւ ազանց զերագոյն ցուցին. արփիափայլ զերգոյս հոգեւորս ընտրեալ դասուց վերին Սիովնի. || Անմատոյց լուսոյն երկրպագեցուք: Որ խորհրդեամբ ճշմարիտ լուսոյ փառաց աննեղէն. ներկարագրեցաւ մեզ գիր կենդանի յարգանդ մաքուր մեծին Մարիամայ. անմատոյց : Որ զծածկեալն խորհուրդ աստուածգիտութեան. անօրինաբար յայտնեալ ծանուցին հանգոյն սրբոյ մեծին Մովսէսի. անմատոյց : Որ յօրինակ ճշմարիտ սիրոյ սուրբ առաքելոցն. ազգաբերաբար ի ձեզ էջցաւ Հոգի շնորհաց բղխումն անսպառ. անմատոյց : Որ երկոքումբք սուրբ լուսաւորչօք տանս Թորգոմայ. հաստատեցեր զեկեղեցիս հայաստանեայց զլոյս իմաստից ի մեզ ծագելով. մաղթանօք սոցա Քրիստոս խնայեա ի մեզ :

ՀԳ. Որ յերկնային զօրս անմարմնոցն նման հեղեր առատապէս Հոգւոյդ ճշմարիտ. զաստուածային եւ զգերագոյն քո իմաստութիւնդ լինել փառաբանիչս սուրբ Երրորդութեանդ. || ընդ նոսին փառաւորեմք զերրեակ միութիւնդ : Որ զկերպարանն աստուածային ստեղծեալ Երրորդութեանդ խորհրդականութեամբ. զարդարեցեր փչմամբ շնորհաց քոց կենդանարար. եւ ընդ ծնեալսն առ ի նմանէ խօսեցար օրինօք եւ մարգարէիւք. ընդ նոսին : Որ յերկրորդում լինելութեանս յե- յարութեան քում էակցին. մտեալ ի վերնատունն դրօքըն փակելովք շնորհելով ըստ առաջին փչմանն ընդ քեզ մետասանից առաքելոցն ասաց առէք Հոգի սուրբ. ընդ նոսին :

Digitized by Google

Հն. Հայր անժամանակ եւ բարեգութ մաղթելով հայցեմք ի քէն վասն մեր ննջեցելոցն արժանաւորել. ‖ հանգստեան օթեվանին սրբոցն: Անճառ ծնունդ Հօր Որդի. որ մահկանացուացս կեանք ես. զննջեցելոցս մեր ընկալ եւ արժանաւորեա. հանգստեան: Եւ նորոգող սուրբ Հոգի. յորժամ նորոգես զապականեալսն. յայնժամ շնորհեա եւ մեր ննջեցելոցն արժանաւորել. հանգստեան:

ՄԾ. Ով գերահրաշ ծաղիկ բուրեալ յԵդեմայ. հոտ անմահութեան ծնեալ նորոգաս Եւայի յորմէ սփռեցաւ մահ ընդ տիեզերս. օրհնութեամբ ընդ քեզ մեծացուցանեմք: Դուռն լուծիչ երկանց բարձող անիծից. ծագումն արեւու լուսոյն ճըշմարտի որով հերքեցաւ խաւարն առաջին. օրհնութեամբ ընդ քեզ մեծացուցանեմք: Ընդ քեզ ունիմք բարեխօս կոյս անհարսնացեալ մայր անարատ Էմմանուէլի տեառն Բանին Հօրն երկնաւորի. օրհնութեամբ ընդ քեզ մեծացուցանեմք:

ԽՁ. Ի վերայ վիմի հաւատոյ հիման առաքելոց եւ մարգարէից. շինեցեր ընդ քո սուրբ զեկեղեցի եւ ի սմա միաձայնեալ երգեն մարդիկ ընդ հրեշտակս. փառաւորելով սուրբ զԵրրորդութիւնդ: Տեղի ապաւինի եւ ժողովարան բանաւոր հօտի. բնակարան հրեշտակաց նաւահանգիստ արդարոց եւ մեղաւորաց քաւարան. զարդարեալ առաքելովք եւ մարգարէիւք:

— Փառք Հօր: Բանն Աստուած եւ ծածկեալ խորհուրդն յաւիտենից. ի ձեռն ի յերկնից մարմնացեալ ի կուսէն խաչեալ յերկրի եւ թաղեալ ի նոր ի գերեզմանի. եւ յարուցեալ յերրորդ աւուր զի զմարգարէիցն ըղձանսն կատարեսցէ:

— Այժմ եւ միշտ: Ի յամուլ երկրէ այսօր բուսաւ մեզ

Digitized by Google

բարեբեր բոյսըն բարի · շուշան հովտաց ծաղիկըն դաշտաց միամայրըն Մարիամ մրմաս տընկոյն անմահութեան · աղաչանօք սորա խընայեա ի մեզ:

---

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԴԶ

Որ ի վերայ քերովբէից նըստեալ հանգչիս Բանդ Աստուած · այսօր հրաշափառ պարգեւօք ցուցեր ծնընդեամբ ի յԱննայէ աթոռ փառաց յերկրի զաւուրըն Մարիամ · ‖ օրհնեալ Տէր Աստուած հարցըն մերոց: Որ ի լերինըն Թաբորայ փայլատակեալ հուրդ աստուածային · հողմով և շարժմամբ յայտնեալ ի պատկուցամըն սուրբ մարգարէին · այսօր գըթութեամբ և մեղմութեամբ · յարմարեցեր տեղի խըման անճառելի խոնարհութեամբ ի յօդ հանգուրստ զօրինակեալըն Մարիամ · օրհնեալ: Որ ի կանուխ ժամանակաց ստորագրեցեր զանօրէնութեան քո ըզգանեղի · տաճար եւ քաղաք շինեալ բարձող անուանըն քում բարձրելոյ · այսօր առուգապէս յայտնեալ ցուցաւ բնակարան աստուածութեան քո սուրբ կոյսըն Մարիամ · օրհնեալ:

Գ. Ըզ Տէր օրհնեցէք ‖ բարձր արարէք ըզծընեալն այսօր ըզմայր մաքուր Բանին ըզմիշտ կոյսն: Որ ի զօրաց հոգեղինաց երգարանի Սերոբէին · ըզծընեալըն այսօր օրինօք բնութեան զմայրն Աստուծոյ Բանին ի վեր քան ըզբնութիւնս · բարձր: Որ ի զաւակաց մարգարէից և յերջանիկ առաքելոցն օրհնաբանեալ Տէրուհին · ըզլուծիչ երկանցն Եւայի զմայրըն կենաց ծընեալըն այսօր ի յԱննայէ · բարձր:

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԴԶ

Առաւօտ խաղաղութեան եւ արուսեակ զըւարթարար · այսօր Մարիամ սըրբուհին ի փառըս քո Քրիս-

տոս ծագեաց մեզ լոյս յորդւոցն օրհնեաց. ‖ անդադար երգով սրբովք զքեզ միշտ մեծացուցանեմք: Դրախտ աստուածային և տնկեալք Էմմանուէլի. այսօր Մարիամ հրաշագեղ ծնեալ ի յԱննայէ ի մայրութեան քո հրաւիրեալ Քրիստոս Որդի Աստուծոյ. անդադար: Տապանակ ապրեցուցիչ և տաղաւար աբրահամեան աստուածընկալ. այսօր Մարիամ լուսապայծառ միածին ծնունդ յայտնեալ ծնողաց ի ծնողութեան քո կոչեցեալ միածին Որդի Աստուծոյ. անդադար:

ՈՂՈՐՄԵԱ ԴՁ

Անճառելիդ Աստուած անզննական ի հրեղինաց. այսօր հաճեցար ի հողեղինաց յայտնել թարգմանն աստուածութեանն քո զմիշտ կոյսն Մարիամ. ‖ աղօթիւք սորա ողորմեա մեզ Աստուած: Անժամանակ ծոցոյ ծնունդ Հօր Բանին. այսօր սրբեցեր յորովայնէ ժամանակաւ մայր ի մօրէ անճառ մարդեղութեամբ. աղօթիւք: Ցուցաւ քան զարուսեակ անմայր ծնունդ Հօր ի յերկինս. այսօր ընտրեցեր իմաստութեամբ մայր անարատ անհայր ծննդեան քո ի յերկրի. աղօթիւք:

ՏԷՐ ԵՐԿՆԻՑ ԴՁ

Թագաւոր փառաց Աստուած Հոգիդ կենդանարար. ի շնորհաբաշխ աւուր մեծի ծննդեան Մարիամու դստեր Դաւթի թագաւորին. Նորոգեա զկենդանութիւն մերոյ թագաւորի Ն. զի օրհնեսցուք զքեզ Տէր այժմ և յաւիտեան: Աղբիւր կենաց և փրկութեան մերոյ Հոգի Հօր եւ Որդւոյ. ի յարմատոյն Յեսսեայ բղխման զաւազանի հասեալ ժամուս. շնորհազարդ պայծառացո զզաւազան իշխանութեան մերոյ հայ-

բարեխօսին. Զի օրհնեսցուք ըղջեղ Տէր անձամբ և
յաւիտեան։ Արժանի աշխարհի եւ ճառագայթ իմանալի
հոգւոյ սուրբ Աստուծոյ. Ի ցընծութեան ասեր լըրման
ուրախութեան Յովակիմայ եւ Աննայի. անդ մթեալք ա-
ցա ըղջո զգեստու կարեաց հայաստանեայց եկեղեց-
եաց. զի։

Առաւօտու Նշք. Ոչ են բանք։ Ընդ ամենայն երկիր։
Թարգմ Աստուած մեծ հզօր և փառաւորեալ։
ՄԱՆԿՈՒՆՔ ԱԿ. Աշակերտք Քրիս։ Նշէ+ տոմ։ 987։

ՃԱՇՈՒ
ԴՋ

Որ ի բարձրութենէ երկնից բարձրը բանիւ ակք բարե-
բանիւ Սերովբէ. Ի Լուսանուանէ զիմեալ հարսն
զգեցեալ այսօր զարեգակն արկեալ ըղջև եւ ընդ ոտիւ
զլուսինն առաւօտանուկ. Օրհնութեամբ երգով ե-
կեղեցիք տիեզերաց այսօր տօնեն ըզյիշատակ ծնըն-
դեան քո ի մօրէ։ Վեհագոյն սերովբէից և բարձրա-
ցեալ քերովբէից տիրամայր Աստուածածին. առաքի-
նակ կըտակի սափոր ոսկի խորհըրդաւոր խորանն թա-
նին հօր բարձրելոյ. օրհնութեամբ։ Մարգարէից հան-
դիսարան եւ գրաւական կենաց մարդկան Մայր
Աստուածամայր. ընդ ամարան եօթնարփին չնոր-
հացն խորհուրդ յուսոյ հաստատութեան զուգաթիւ ա-
ւուրց զարուցա մնացաւորաց. օրհնութեամբ։

ՑԵՐԵԿՈՑԻ ՀԱՄԲ. ԴԿ. ՍՏ. Իւղաբերից։ 759։

# Ա. ԶՈՐԵՔՇԱԲԱԹԻ
Պահոց

ՑԱՌԱԻՕՏՈՒ ՀԱՐՑ ԲԿ. Որ հարցն մերոց Աստ։ 227։

Digitized by Google

# Ա. ՀԻՆԳՇԱԲԱԹԻ

## Ս. Բաբելայ հայրապետին եւ երից աշակերտաց նորին

ՑԱՌԱՒՕՏՈՒ ՀԱՐՑ ԳՁ. Որ զանճառ քո զբա: 92:

---

# Ա. ՈՒՐԲԱԹ

## Պահոց

---

# Ա. ՇԱԲԱԹ

## Ս. Երեմիայ մարգարէին

Ի ԳԻՇԵՐԻ ՕՐՀ. ԱԿ. Որ զաստուածային զօրու: 881:
ՑԱՌԱՒՕՏՈՒ ՀԱՐՑ ԱՁ. Որ յերկն: Իւր տաղօքն: 922:
ՄԱՆԿՈՒՆՔ ԴՁ. Որ զյառաջագոյն ընտրեալ: 887:

---

ՑԵՐԵԿՈՑԻ ՀԱՄԲ. ԱՁ. Սուրբ ես Տէր: Երկ: 110:

---

(Իսկ թէ տօն գիւտի գօտւոյ Ս. Աստուածածնի յայսմ վայրի ե-[illegible] որ կարգեալ է յՕգոստոսի 31, երկու կանոն տօնել տօնեա:)

---

# Բ. ԿԻՐԱԿԷ

## ՁԿՆԻ ՓՈԽՄԱՆ

---

ՑԱՌԱՒՕՏՈՒ
ՀԱՐՑ ԳՁ

Փառաւորեալ Որդի Աստուծոյ որ: Իւր տաղօքն: 647:

---

# Բ. ԵՐԿՈՒՇԱԲԱԹԻ

## Ս. Պիոնի քահանային եւ Ստեփաննոսի Ուլնեցւոյն եւ Աբդլմսեհի վկային

ՑԱՌԱՒՕՏՈՒ ՀԱՐՑ ԱԿ. Սուրբ Աստուած: 82:

ՄԱՆԿՈՒՆՔ ԴՁ

Ցընծայ այսօր սուրբ եկեղեցի. յիշատակաւ սըրբոց վըկայիցն որք արիաբար մարտեան ընդդէմ բըռնութեան չարին. կատարեալք արեամբ վասն անուանըն Տեառն: Սըրբոյն Ստեփաննոսի մեծ նա-

Digitized by Google

հաստանկին. այսօր նըշմանեալք նախավըկային զօ-նուանակրութեանն յինքեան բերեալ և զհանդէ-մարտին. պըսակեցաւ նըշմանեալ նըշմին: Երկ-տասանից և չորեքից ընտրելոցն ի Տէր. նահա-տակեալք ի փորձ տանջանաց և ընկալան ի Քրիս-տէ զյաղթանակ մարտին. պարգևեալ նոցա զան-վախճան ըզկեանսն: Մաղթանօք հայցմամբք սուրբ Ստեփաննոսեանց. ընկալ Տէր զաղաչանըս մեր պարգևելով ըզթողութիւն մեղաց յանցանաց. բա-րերար Փրկիչ պարգևաց տըւող:

## ՑԵՐԵԿՈՑԻՆ

### ՀԱՄԲԱՐՁԻ ԴԿ

Մարտիրոս և վըկայ Քրիստոսի սուրբ Ստեփաննոս. որ ըզչարչարանըս յանձն առեր. և երկնայինն դա-սուցն եղեր դասակից. Աղաչեա զԱստուած շնորհել մեզ ըզկեանս անվախճան: Ըստ անուան քո եղեր պըսակ եկեղեցւոյ. և հետևող լուսազարդ ճանապար-հին. և յորդորեր զըստոր ընտրելոց ընդ քեզ սըր-բոցն. աղաչեա: Ցընծութիւն եկեղեցւոյ ընտրեցար ի Հոգւոյն. և լուսաւորեցեր զորդիս Թորգոմայ. այ-սօր բերկրին հաւատացեալք. և տօնեն ըզծընընդու-թեան քո զհանդէս. աղաչեա:

## Բ. ԵՐԵՔՇԱԲԱԹԻ

Ս. Անդրէի զօրավարին եւ բանակի նորին, եւ կալինիկոսի վկային, եւ Դիոմիդեայ բժշկին

ՑԱՌԱՒՕՏՈՒ ՀԱՐՑ ԳԿ. Ջինուորութիւնք հրեշ: 95

## Բ. ՉՈՐԵՔՇԱԲԱԹԻ

Պահոց

ՑԱՌԱՒՕՏՈՒ ՀԱՐՑ ԲԿ. Մանկունքն գերեալք: 228

# Բ. ՀԻՆԳՇԱԲԱԹԻ

Ս. Ադրիանոսի եւ կնոջ նորա Անատոլեայ, եւ Թէոդորոսի ստրատելատի, եւ Թիւրսոսի վկային

ՑԱՌԱՒՕՏՈՒ ՀԱՐՑ ԱԿ. Որ բարձրեալդ ես և։ 83։

# Բ. ՈՒՐԲԱԹ

Պահոց

# Բ. ՇԱԲԱԹ

Ս. Թովմայի առաքելոյն

Ի ԳԻՇԵՐԻ ՕՐՀ. ԳՁ. Երանելի։ Իւր տաղօքն։ 924։

ՄԱՆԿՈՒՆՔ ԱԿ

Աշակերտքդ Քրիստոսի. եւ առ ամենայն տիեզերս նահատակեալք. Բարեխօսեցէք առ Տէր վասն մեր։ Որք առէք ընդ պատուէր. քարոզել անհրկիւղ ընթացըն կենաց յաշխարհի. բարե։ Որք արժանի եղէք տեսանել մարմնով զՈրդին Աստուծոյ յայտնապէս. բարեխօսեցէք։

Քրիստոսական հօտին անմահ արօտք եւ ջուրք հանգստեան հրակող հովիւք խաւարահալածք. բանաւոր փարախ սուրբքդ Թովմաս եւ Փիլիպպոս. բարեխօս լերուք առ Տէր վասն անձանց մերոց։

ՑԵՐԵԿՈՑԻ ՀԱՄԲ. ԱՁ. Սուրբ ես։ 110։ Ի քէն։ 111։

Յայս միջոցս հանապազ շաբաթ մի յաւելու և նուազի. եթէ յաւելու, նախքան զոր քրեցելումն պահել, և թէ նուազի, միւսոյ շաբաթուոյ պահն է մի միաբանել։

# Գ. ԿԻՐԱԿԷ

ՃԿՆԻ ՓՈԽՄԱՆ

ՑԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԳԿ

Անճառելի բնութիւն և Բան Հօր։ Իւր տաղօքն։ 669։

# Գ. ԵՐԿՈՒՇԱԲԱԹԻ

## Ս. Թարգմանչացն, Մեսրովպայ վարդապետին եւ Եղիշէի, Մովսէսի քերթողի, եւ Դաւթի անյաղթին, եւ Գրիգորի Նարեկացւոյն, եւ Ներսէսի Կլայեցւոյն, եւ Ներսէսի Լամբրոնացւոյն

Զամենայն ինչ զթարգմանչացն տես ի տօնին ։ 870 ։
ՄԱՆԿ. ԵՒ ՀԱՄԲ. ԳԶ. Նմանեալ Մովսէսի ։ 876.

---

# Գ. ԵՐԵՔՇԱԲԱԹԻ

## Ս. Մարգարէիցն Եզեկիելի, Եզրի, եւ Զաքարիայ հօրն Յովհաննու Մկրտչի

Ի ԳԻՇԵՐԻ ՕՐՀ. ԱԿ. Որ զաստուածային զօրու ։ 881.
ՑԱՌԱՒՕՏՈՒ ՀԱՐՑ ԴԶ. Որ ընդ հողեղէն ։ 884.
ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԴԶ. Անարատ կոյս Աստուած ։ 261.
ՄԱՆԿՈՒՆՔ ԴԶ. Որ զյառաջագոյն ընտրեալ ։ 887.
ՑԵՐԵԿՈՅԻ ՀԱՄԲ. ԴԿ. Այսօր ցնծայ զուար ։ 886.

---

# Գ. ՉՈՐԵՔՇԱԲԱԹԻ

## Պահոց

### ՑԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԲԿ

Տէր Աստուած հարցըն մերոց յամենայնի արդար ես եւ սուրբ է քո տէրութիւնդ։ Երեք մանկունքն հնոցին. հրեշտակային ձայնիւն ըզքեզ փառաւորէին. Եւ երգելով զայս ասէին. օրհնեալ է քո տէրութիւնդ օրհնեմք եւ փառաւորեմք։

Գ. Ըզտէր օրհնեցէք եւ || բարձր արարէք ըն[դ] յաւիտեանս։ Որ զայրեցող բնութիւն բոցոյն ի ց[օղ] փոխարկելով. ի տոչորմանէ հըրոյն զերիս մանկունսն անկէզ պահեալ եւ բարձր։ Հրաշալի աստուածային տեսլեամբըն չորրորդին. բըռնաւորըն պակուցեալ գոհնաբանեան ը զուարճացոյց եւ բարձր։

Digitized by Google

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԲԿ

Ուրախ լեր մայր լուսոյ Մարիամ․ երկիր բա ։ 222։

ՈՂՈՐՄԵԱ ԲԿ

Մեղք իմ բազում են յոյժ ծանր են քան զաւազ ովու․ ‖ քանզի քեզ միայնոյ մեղայ․ ողորմեա ինձ ստուած ։ Բաց Տէր ըզդուռն ողորմութեան որ ող-ալով կարդամ առ քեզ․ քանզի ։ Հեղ յիս ըզգըթու-իւնըս քո բազումողորմ և մարդասէր․ քանզի ։

ՏԷՐ ՑԵՐԿՆԻՑ ԲԿ

Ամենայն երկիր․ տուք փառս անուան նորա․ որ եկն և փրկեաց ըզմեզ ։ Ամենայն հոգիք․ ձայնիւ ցըն-ծութեան մբ․ բարեբանեցէք ըզՏէր ։ Չի եցոյց եզ Տէր․ զփրկութիւն և զկեանս անմահս․ յազգէ անն Իսրայելի ։

---

# Գ · ՀԻՆԳՇԱԲԱԹԻ

Ս · Յովհաննու կարապետի, եւ յիշատակ Յովբայ արդարոյն

Ի ԳԻՇԵՐԻ ՕՐՀ․ ԳՁ․ Զմարգարէ բարձրելոյն ։ 832
Դ Կ․ Որ յորովայնէ ընտրեցար ։ Ի-բ ——ին ։ 833 ։
ՄԱՆԿՈՒՆՔ ԵՒ ՀԱՄԲ․ ԴԿ․ Մարգարէից գերա ։ 837 ։

---

# Գ · ՈՒՐԲԱԹ

Պահոց

---

# Գ · ՇԱԲԱԹ

Նիկիոյ Ս · Ժողովոյն երեքհարիւր ութեւտասան հայրապետաց

Ի ԳԻՇԵՐԻ ՕՐՀ․ ԳՁ․ Այսօր սրբոց ։ Ի-բ ——ին ։ 934 ։
ՄԱՆԿՈՒՆՔ ԳՁ․ Ով հրաշալի նախահարք ։ 939 ։

---

ՑԵՐԵԿՈՅԻՆ ՀԱՄԲ․ ԱՁ․ Սուրբ ես Տէր ։ Երկ ։ 110 ։
Ս ԳՁ․ Հանդիսացեալք ։ 939 ։

---

Digitized by Google

ԾՆ. Որ ըզմարմնացեալըն տէրարար. ի յորովայնէ քում կերտեցեր ‖ ուրախ լեր անհարսնացեալ մայր։ Որ զանտանելին յէից ի յարգանդի. անապականաբար կերտեցեր ուրախ։ Որ զարարչութեան բանըն գոյացեալ. ըստուգապէս աշխարհի ծընար. ուրախ։

ԾՆ. Այսօր յայտնեցաւ մեզ. բարձրեալըն բազմեալ բանըն յանբանից մըրուր. զանձան և երկնաւոր հաց։ Այսօր ցընծան զըւարթունք երկնից. տանելով զաւհաւոր զաւհանդին և զհրաշալի ծընընդն. ըն մերս աշխարհի ցուցաւ։ Ընդ նըմանել զըւարթնոցն ի փառաբանութիւն. տեսանէին անմայ բանսն գործեալ ի հրամանէ վերին. դաւմձմք երգեսցուք հովուացն։

ՄԾ. Աստուածածին խորան լուսոյ. անվայրարան արփւոյն կենաց որ եղեւ ր արեւելք արեգականն արդարութեան. եւ նըշանակեալ ի խաւարի լոյս ծագեցեր. ‖ վասն որոյ ամենեքեան ըզքեզ միշտ մեծացուցանեմք։ Անապականն տաճար. եւ մորենի անկիզելի որ զանչէ ղ հուր աստուածութեանն ի քեզ տարեալ կըրցեր. որով բնութեանս կիզեալ շիջաւ կրից բոց. վասն կենդանի տապանակ. կտակարանաց նորոյ աւետարանի որով եւ լք յերկիր աւետեաց հորդեալ. Հոգւով ի քեզ տըպաւորեալ բանին. վասն։

Աստուածածին սուրբ լուսոյ ամպ հովանաւոր. է ընդակարան բանին որ բանիւ հովուէր զիսրայէլ. բորբոքեալ նըման վասն անձանց մերոց։ Զանապական կոյսըն Մարիամ Աստուածածին խոստովանիմք սուրբ եկեղեցի. ուստի տըւաւ հացն անմահութեան եւ բաժակ մեզ փրկարար. տուք օրհնութիւնս նըման

գեւոր երգով։ Զտաճար անապականն Բանին Հօր· բարեբանեն դասք հոգեղինացն· գովեմք և մեք ձայնակցելով երկնայնոցն։

Հգ· Այսօր ցնծան դասք առաքելոցն գալստեամբ Հոգւոյն Աստուծոյ· զոր մխիթարեաց փոխանակ Բանին մարմնացելոյ եղեալ ընդ նոսա· ‖ փառըս տացուք Նըմա սրբասացս ձայնիւ։ Այսօր բղխեաց ջուր կենդանի յԵրուսաղէմ յորմէ լցան գետք աստուածայինք· և ընթացեալ արբուցին տիեզերաց զքառավտակ աղբիւրն Եդեմայ· փառըս։ Այսօր ցօղով իմանալեաւ յամպոց Հոգւոյն զուարթացան բոյսք եկեղեցւոյ· պարարտացան դաշտք արդարութեամբ և գեղեցկացան անապատք մաքուր կուսութեամբ· փառըս։

Հն· Լեառըն վիմածին աղբիւր յորդառատ· բարունակ ծաղկեալ այգի վայելուչ սրովբէ հողեղէն· բաբունոյ Բանին տուն տնօրէնութեան տաղաւար Հոգւոյն· ‖ առ ծընեալն ի քէն միշտ բարեխօսեա անդադար հայցմամբ· շնորհել զթողութիւն մեր նընջեցելոցն։ Փափկութեան դրախտին բացող բանալի· Քրիստոսի բարձող Նըմանող երկնից· սափոր ոսկեղէն լի մանանայիւ· զաւազան ծաղկեալ յարմատոյն Յեսսեայ տաճար լուսոյ մայր· առ։ — Փառք Հօր։ Ցօղ քաղցրածաւալ ցանկալի զուարթնոցն· Նիւթեղէն սրովբէ գեղ մարգարտափայլ հիմն եկեղեցւոյ· մաքուր աղաւնի անմեղ հովանաւոր սուրբ կոյս Մարիամ· առ։

— Այժմ և միշտ։ Այսօր ծընաւ մայրն ամուլ ըղքեզ յարմատոյն Յեսսեայ ծառ կենաց ծաղկեալ Տիրուհի· որ ետուր մարդկան ի ժամու պըտուղ զհացըն կենաց զիջեալն ի յերկնից· բարեխօսեա Սըրբուհի վասն անձանց մերոց։

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

### ՀԱՐՑ ԴԿ

Ո՛ր զնախագրեալն յաւիտենից գուշակութեամբ մարգարէիցն. կատարեցեր Հայր երկնաւոր տալով ըն-կոյսն ի յԱննայէ ։ Ըզքեզ բարեբանեմք Աստուածահարցըն մերոց ։ Ո՛ր ի յուսոյ ամուլ ծնընդեանն ըն-ծայեալ քո ի կուսէն. այսօր հրաշիւք Հօր միածին յամուլ մօրէ ըզմայրըն քո պարգեւեցեր ըզքեզ ։ Ո՛ր զօրհնեալ Մարիամու Հօրից ցուցեր մարգարէին. այսօր զաւակ Յովակիմայ եւ աւր ըղլեալըն վիճակին ըզքեզ ։

Գ. Ըզ Տէր օրհնեցէք ։ Ի բարձր աթոռքէ ըզգեստ յաւիտեան ։ Զուարճացիր Յոակիմ հին Հանդիսարանն ան-ստողացն. որ բազմագոյն օրհնութեամբ գուշակեցեր ըն-ծնօղ բանին Տեառն Աստուծոյ բարձր ։ Ուրախացիր եկեղեցի դուստըր վերինըն Սիօնի. քանզի ծընաւ ի յԱննայէ մաքուր ծընող քոյն փեսայի բարձր ։ Փառա-նայք եւ ժողովուրդք տօնախըմբողք ծնընդեան կուսին. ընդ Յովակիմայ եւ Աննայի ծնողաց սըրբոյ ծնօղի Բանին բարձր ։

### ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԴԿ

Նախահայրապետացն Աբրահամու Իսահակայ եւ Յակոբայ պարգեւեցար ի յԱստուծոյ կոյս Մարիամ դուստր նոցին ։ Ի երանեն ազգ եւ ազինք այսօր ըզծնեալդ ի յԱննայէ ։ Աղախին եւ մայր կենաց աջոյն ծընօղ Հօր Միածնին. որ առ ի քէն մարմնով ընկէց զամբարտաւանըն յաթոռոյ. եւրա ։ Որ բարձրացոյց զանկեալ բնութիւնս ի քէն ծընընդեամբ Որդին յերկինս. ըզկարօտեալս լցից հացիւ եւ զմեծատունսն մերժեալ ունայն. եւր ։

### ՈՂՈՐՄԵԱ ԲԿ

Ո՛ր ողորմեցար ի մեղս ծընեալ մարդկան Հայր եր-

կնաւոր ըստ մարգարէին. եւ եղեւ բնութեանս այսօր պարգեւ ըզկոյսըն սուրբ ըզծնող Որդւոյդ միածնի. ‖ մաղթանօք սորա Տէր մեզ ողորմեա։ Որ ցօղեցեր ի մեզ յամպոյ օրհնեալ Որդիդ այսօր զկոյսըն Մարիամ. յորմէ ծընար մարմնով եւ բարձեր նովաւ ըզմեղս նախաստեղծին Ադամայ. մաղթանօք։ Որ մաքրեցեր Հոգիդ սուրբ ըզսիրտ եւ զարգանդ մօր քո փառակցին. այսօր ամուլ ծնողաց նորին եղեւ ըզմայր Բանին զօրհնելին Եւայի. մաղթանօք։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԲԿ

Այսօր ցընծան երկնայինքն եւ պար առեալ ի բարձունս. երգեն զերգըս հոգեւորս ‖ յաւուր ծնընդեան Սըրբուհւոյն։ Այսօր վերինըն Սիոն գոչեն զերգըս սրովբէից. զերեքսըրբեանն ասելով յաւուր։ Այսօր աստեղք եւ լուսին ընդ արեւու հըրճուելով. գովեն ըզգլխոյն ի Հօրէ յաւուր ծնընդեան լուսոյ մօրն։ Այսօր ծերքն օրինականք մանկամբք նորոյ Սիոնի. երիտասարդք եւ կուսանք խընդան ծնընդեամբ Տիրուհւոյն։ Այսօր գունդք առաքելոյն եւ պարըք նախատեսացն. յաւուր ծնընդեան մօր Բանին երգեն ըզփառս ի բարձունս։

Առաւօտու Երգ. Իջցէ որպէս։ Աստուած զիրաւունս քո։ Քարոզ Մայր սուրբ։

Ջնի Սուրբ Աստուածածին Մաղ. Փրկեա։ Քար. Վասն լսելի։ Քահ. Օրհնութիւն։ Եւ այլն

ՍԱՂՄՈՍ ԿԷ. ի Բե

ԿԹ. Տէր տացէ զբան։ Փխ. Յարիցէ Աստուած։ 293։

Ընթերցուած յԱռակաց։ ԼԱ. 29։

Բազում դստերք ստացան զմեծութիւն, բազումք արարին զօրութիւն, բայց դու առաւել եղեր եւ անցուցեր զամենեքումբք. սուտ հաճութիւնք եւ ընդունայն գեղ

կնոջ ոչ գոյ ի քեզ ։ Զի կին իմաստուն և բարեպաշտօն
օրհնեսցի ։ Զերկիւղածս Տեառն պատուեսցէ նա. տուք
նմա ի պտղոյ շրթանց նորա, և գովեսցի ի դրունս այր
նորա ։ Զի ճանապարհք առն առաջի երեսաց իւրոց եր-
թիցեն, և աջողեսցին յաւիտեանս յաւիտենից ։ 31 ։

Ընթերցուած յեսայեայ մարգարէէ։ ԿԱ. 9։

Եւ ծանիցի ի մէջ ազգաց զաւակ նոցա, և ծնունդք
նոցա ի մէջ ժողովրդոց. ամենեքին որ տեսանիցեն՝ ծա-
նաչիցեն զնոսա՝ և ասիցեն թէ սոքա են զաւակ օրհնեալ
յԱստուծոյ. և ուրախութեամբ ուրախ եղիցին ի Տէր ։ 9։

Պօղոսի առաքելոյն ի Գաղատացւոց թղթոյն է
ընթերցուածս։ Գ. 24։

Ապա օրէնքն դաստիարակ եղեն մեզ ի Քրիստոս Յի-
սուս, զի ի հաւատոցն արդարասցուք. այլ իբրև եկն
հաւատքն, ոչ ևս ընդ դաստիարակաւ եմք. քանզի ա-
մենեքին որդիք Աստուծոյ էք՝ հաւատովք ի Յիսուս Քրի-
ստոս ։ Որք միանգամ ի Քրիստոս մկրտեցարուք՝ զՔրի-
ստոս զգեցեալ էք. չիք խտիր, ոչ Հրէի և ոչ հեթանոսի,
ոչ ծառայի և ոչ ազատի, ոչ արուի և ոչ իգի. զի ա-
մենեքեան դուք մի էք ի Քրիստոս Յիսուս ։ Ապա եթէ դուք
Քրիստոսի էք, ուրեմն Աբրահամու զաւակ էք, ըստ աւե-
տեացն ժառանգք ։ 29 ։

Ձայնն Ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա.

Հոգին սուրբ եկեսցէ ի քեզ և զօրութիւն Բարձրելոյն
հովանի լիցի ի վերայ քո ։

Ալէլուիա, Օրթի

Սրբոյ Աւետարանին որ ըստ Մատթէոսի։ Ա. 1։

Գիրք ծննդեան Յիսուսի Քրիստոսի որդւոյ Դաւթի
որդւոյ Աբրահամու ։ Աբրահամ ծնաւ զԻսահակ, Իսահակ
ծնաւ զՅակոբ, Յակոբ ծնաւ զՅուդա և զեղբարս նորա ։
Յուդա ծնաւ զՓարէս և զԶարա ի Թամարայ, Փարէս
ծնաւ զԵզրոմ, Եզրոմ ծնաւ զԱրամ, Արամ ծնաւ զԱ-
մինադաբ, Ամինադաբ ծնաւ զՆաասոն, Նաասոն ծը-
նաւ զՍաղմոն, Սաղմոն ծնաւ զԲոոս ի Ռաքաբայ,
Բոոս ծնաւ զՈվբէթ ի Հռութայ, Ովբէթ ծնաւ զՅես-
սէ, Յեսսէ ծնաւ զԴաւիթ արքայ ։ Դաւիթ ծնաւ ըզ-

Սողոմոնն ի կնոջէն Ուրիայ, Սողոմոնն ծնաւ զՌոբովամ, Ռոբովամ ծնաւ զԱբիա, Աբիա ծնաւ զԱսափ, Ասափ ծնաւ զՅովսափատ, Յովսափատ ծնաւ զՅովրամ, Յովրամ ծնաւ զՈզիա, Ոզիա ծնաւ զՅովաթամ, Յովաթամ ծնաւ զԱքազ, Աքազ ծնաւ զԵզեկիա, Եզեկիա ծնաւ ըզՄանասէ, Մանասէ ծնաւ զԱմովս, Ամովս ծնաւ զՅովսիա, Յովսիա ծնաւ զՅեքոնիա և զեղբարս նորա առ գերութեամբն Բաբելացւոց: Յետ գերութեանն Բաբելացւոց ծնաւ Յեքոնիա զՍաղաթիէլ, Սաղաթիէլ ծնաւ զԶորոբաբէլ, Զորոբաբէլ ծնաւ զԱբիուդ, Աբիուդ ծնաւ զԵլիակիմ, Եղիակիմ ծնաւ զԱզովր, Ազովր ծնաւ զՍադովկ, Սադովկ ծնաւ զԱքին, Աքին ծնաւ զԵղիուդ, Եղիուդ ծնաւ զԵղիազար, Եղիազար ծնաւ զՄատթան, Մատթան ծնաւ զՅակովբ, Յակովբ ծնաւ զՅովսէփ զայրըն Մարեմայ՝ որում խօսեցեալ զՄարիամ կոյս, յորմէ ծնաւն Յիսուս, որ անուանեցաւ Քրիստոս: Արդ ամենայն ազգքն յԱբրահամէ մինչև ի Դաւիթ՝ ազգք չորեքտասանք, և ի Դաւթէ մինչև ի գերութիւնն Բաբելացւոց՝ ազգք չորեքտասանք, և ի գերութենէն Բաբելացւոց մինչև ի Քրիստոս ազգք չորեքտասանք: 17:

Յետ Աւետարանին Ըն կէսորւնէ հանգիստն, Շնորհաստեղծեալն տոն: Ես Ըն լոյր օր ըննէ, Արարչականն. տոն զինչ և օրն ներքէ. յաւել և Ակուսին Նախնոյ:

Զինէ Քար. խնդր: հեցո. յայնէս: Աչ. Քում ամենազօր:

---

## ՃԱՇՈՒ

Գ Կ

Ծառ կենաց տընկեալ յադին սուրբ կոյս. որ ըզհայրածինըն բըղխեցեր զծաղիկ և ետուր ի ժամու զՈրդին պըտուղ մարդկան. զորոյ զմարմինըն ճաշակեալ անմահացեալ յուսով. ‖ վասն որոյ օրհնաբանեմք ըզքեզ յաւէտ քո ծնընդեան: Բանաւոր երկիր Տիրուհի և անդաստան մաքուր ի փշոց մեղաց որ ըզբուսեալն երկնային առանց սերման ծընար. որով զկենացն ետուր ըղձանց սովեալ բնութեանս. վասն: Ամպ թեթև յերկրային ցանկութեանց սուրբ կոյս և վառա-

րան աստուածային բոցոյն որ ըզցօղն հայրաբուղխ անձրեւեցեր ի բանական երկիր. որով բնութեան բուսան արդարութեան սուրբ բոյսք. վասն որոյ օրհնաբանեմք ըզքեզ յաւուր քո ծննդեան։

---

## ՑԵՐԵԿՈՅԻՆ

ՄԵՍԵԴԻ Ծննդեան. Մեծացուցէ անձն։ Զի հայեցաւ։ Քարոզ Մայր սուրբ։

ՀԱՄԲԱՐՁԻ ԴՁ

Նոր Սիոնի ծնեալ մանկունք սուրբ աւազանաւն. շնորհազարդեալք Հոգւոյն Աստուծոյ. օրհնեցէք զՀայրն երկնաւոր յաւուր ծննդեան սրբուհւոյ կուսին. ‖ յոր օրհնեցայք յանբծից նախնոյն։ Աւրեամբ զաւրինն անարատին փրկեալ ժողովուրդք. յաւուր ծննդեան մօր անտանելւոյն. զովեցէք զՄիածինն որ հաճեցաւ առնուլ մարմին [illegible] նմանէ. յոր։ Յառատաբուղխ շնորհաց Հոգւոյն լուսազարդեալ ազգք հեթանոսաց. յաւուր ծննդեան մօր Բանին ծնողի. ըզփառակից Որդւոյ զՀոգին բարեբանեցէք հոգեւոր երգով. որ մաքրազարդեաց զմարմնարան Որդւոյն։

Քար. Սուրբ զԱստ։ Կեցո. Յոյժ։ Աղ. Ընկալ Տէր.

---

# ԵՐԿՈՒՇԱԲԱԹԻ

## Պահոց

## ՑԱՒԱԻՕՏՈՒ

ՀԱՐՑ ԲԿ

Մանկանց ըզձայնըն քեզ վերաձօնեմք. արդար ես յամենայնի Տէր զոր ածեր ի վերայ մեր. ‖ Աստուած հարցըն մերոց։ Քանզի ոչ պահեցաք ըզպատուիրանս քո. նըւաղեցաք մեք յամենայնի. արդ թող մեզ Տէր ըզ-

յանցանըս մեր. Անտրուած։ Օրհնեալ Տէր եւ փառաւ-
որեալ առ քեզ պաղատիմք. այլ մի սպառ մատներ
զմեզ. եւ մի ցրեր զուխտըս քո Անտրուած։

Գ. Ըզտէր օրհնեցէք ‖ բարձր արարէք յաւի-
տեան։ Զանըսկիզբըն բանըն հօր զէակն էից. որ
ի բաբելոնին ի հնոցին ըզհուրն ի ցօղ փոխարկեաց պա-
տագրելով զերիս մանկունսըն բարձր։ Որ ըզլոյս
թառանց ծագեալ ի մէջ հնոցին օրհնաբանիցն. ընդ
նոսին համաձայնեալ երգեսցուք խոնարհ սըրտիւք զի
շիջուցէ զանտանելի հըրոյն բորբոքումըն բարձր։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԲԿ

Մայր լուսոյն Մարիամ անհարսնացեալ օրհնեալ։ 137։

ՈՂՈՐՄԵԱ ԲԿ

Թիւնս իմ Մեղայ քեզ Տէր մեղայ ողորմեա։ Մե-
ղայ ‖ անօրինեցայ եւ մատնեցայ ի ձեռս անօրէն թըշ-
նամւոյն. արդ անկեալ աղաչեմ թող ինձ Տէր։ Քան
զամենեսեան առաւել մեղայ Տէր իմ գըթած. քան զա-
մենեսեան անօրինեցայ։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԲԿ

Ամենայն արարածք համբառնալով ըզձեռըս
ձեռամբ օրհնեցէք ‖ ըզՏէր զբնակեալն
ի յերկինս։ Ամենայն ժողովուրդք յօրհնութիւն ի
նուագս գովեցէք ըզՏէր։ Զայնիւ երգով ցընծու-
թեամբ. բարեբանեցէք զԱստուած ընդ սուրբս
նորա զբնակեալն ի յերկինս։

---

# ԵՐԵՔՇԱԲԱԹԻ

## Պահոց

ՅԱՌԱԻՕՏՈՒ ՀԱՐՑ ԳՁ. փառաւորեալ անուն։ 241։

---

Digitized by Google

# ՉՈՐԵՔՇԱԲԱԹԻ

## Պահոց

ՑԱՌԱՒՕՏՈՒ ՀԱՐՑ ԳՉ. փառաւորեալ է անուն ։ 242

---

# ՀԻՆԳՇԱԲԱԹԻ

## Պահոց

### ՑԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԳՉ

Օրհնեալ ես Տէր. եւ փառաւորեալ է անուն քո յա-ւիտեան. Աստուած հարցն մերոց։ Զօրհնաբանու-թիւն երից մանկանցն ընդ սերովբէսն բարեբանեմք. օրհնեալ։ Զանյաղթելի հըզօր թագաւորդ ընդ քե-րովբէսն բարեբանեմք. օրհնեալ։

Գ. Ըզ Տէր || օրհնեցէք և առաւել բարձր արարէք ըն-նա յաւիտեան։ Եցէք զերկրպագեալն ի հրեշտակաց զփառաւորեալն անդադար. բարեպաշտութեամբ օր-հնեցէք։ Եսցէ զահաւոր զփառաւորեալ զամենատուրս զԵրրորդութիւն զանբաժանելի զբնութիւնն քահանայք օրհնեցէք։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԳՉ

Ուրախ լեր Աստուածածին յոյս և փրկութեան։ 651

ՈՂՈՐՄԵԱ ԳՉ

Մերձեալ է օր գալոյ քո Տէր. լուր ձայնի աղօթից իմոց || որ կարդամս առ քեզ եւ ողորմեա։ Բանից իմոց ունկըն դիր Տէր. եւ ի միտ առ զաղաչանս իմ զառաւօտուս որ կարդամս։ Որ ընկըղմեալս եմ ի խո-րըս չարեաց. սուրբ զհոգիդ քո առաքեա առ իս որ կարդամս։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԳՉ

Օրհնեմք ըզքեզ Աստուած ընդ սուրբըս քո ի յեր-կինս։ Տուր մեզ իմաստութիւն փառաւորել ըզքեզ։

ի տունս և ի գիշերի. ընդ հրեշտակըս քո ի յերկինս։ Լուր ձայնի աղօթից ժողովըրդեան քո. և լեր մեր ապաւէն. պահելով ի խաղաղութեան։

---

## ՈՒՐԲԱԹ

Պահոց

---

## ՇԱԲԱԹ

Տօն Նաւակատեաց սրբոյ Խաչին

### Ի ԳԻՇԵՐԻ

ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԲԿ

Իսկ վերայ վիմի հաւատոյ շինեցեր ըզքո սուրբ զեկեղեցի. ըզսա պահեա ի խաղաղութեան։ Որ շնորհեցեր ողորմութիւն ի բնակարանըս հրեշտակաց և մարդկան քաւարան. տուր սըմա զանշարժ քո զխաղաղութիւն։ Իսկ տաճարի փառաց սրբութեան քո քեզ երգեն մանկունք. տուր սոցա զառատ քո զողորմութիւն։

† Եկայք ժողովուրդք ի տաճարի փառաց Քրիստոսի. || տուք ամենեքեան օրհնութիւն ի բարձունս։ Քահանայք թագաւորըն Քրիստոսի պըսակեաց ըզսա պանծալի փառօքն իւրովք. տուք։

Խաչըն կենարար. որ եղեւ ըմեզ փրկութիւն. || օրհնեսցուք ամենեքեան ըզքեզ բարեբանեմք։ Որ ի Հօրէ լուսոյ լոյս ճառագայթեալ։ Ի յերկրի և գաւազան զօրութեան հաւատացելոց. օրհ։ Որ տուաւ փայտ ծաղկեալ մեզ հրաշափառապէս ըմեզ։ Ի ցուցաւ ի յօգնութիւն ընդդէմ թըշնամւոյն. օրհնեա։

ՑԱՐ. Որ համագոյդ ես Հօր և սուրբ Հոգւոյն. անժամանելի էական միութեան խոնարհեցար ի բարձանց և առեր մարմին ի կուսէն. յաղագս անկելոյն.

չի քո Քրիստոս. հիմնեցուցեր զկաթուղիկէ եկեղեցի բնակարան սուրբ Երրորդութեանդ. լուսաւորելով ըզհեթանոսս ի սմա կըրկնակի ծնընդեամբ ։

ՄՂԿ. Ուրախ լեր եկեղեցի սուրբ. ի գալըստեան սուրբ Միածնին. ուրախ լեր եւ ցնծա հանդերձ ամենայն սրբովք ։ Խնդա յոյժ դուստր վերին Սիոնի. ահա թագաւոր քո գայ նստեալ ի յաւանակի նորոյ. արդար եւ Փրկիչ փրկէ եւ կեցուցանէ ։ Զըւարճացիր եւ բերկրեա ժողովուրդ Աստուծոյ. մատո զոստըս ծաղկեալըս հաւատով եւ ասա. օրհնեալ որ եկիր ընդ թագաւոր տիեզերաց ։

ՀԳ. Այսօր երկնայինքն ուրախացան ընդ երկրաւորացս նորոգմանն. քանզի նորոգողն էից Հոգին էջ ի սուրբ վերնատանն. որով նորոգեցան դասք առաքելոցն ։ Այսօր հողանիւթեայ բնութիւնս ցնծայ ընդ Հօր հաշտութեանն. քանզի որ եբարձ զՀոգին ի մարդկանէ մարմին եղելոց. դարձեալ վերստին ընդոյն պարգեւէ ։ Այսօր մանկունք եկեղեցւոյ տօնեն ցընծութեամբ զգալուստ սուրբ Հոգւոյն. որով զարդարեցան ի զգեստըս լուսափայլս եւ գերապայծառս. երգեն ընդ սրովբէին զերեքսրբեանն ։

ՀՆ. Թագաւոր խաղաղութեան որ քաղցրութեամբ խնամես զքո զարարածս. յիշեա Տէր զհոգիս նընջեցելոցն ընդ սուրբս քո եւ դասաւորեա ի յաւուրն այցելութեանն ։ Որ կոչեցեր ի դրաց մահու ըզսիրելիս քո զՂազարոս. եւ ծանուցեր զաստուածութիւնդ ընդհանուր տիեզերաց. լուսաւորեա Տէր ։ Ի տաճարի քում սրբութեան մատուցանեմք քեզ պաղատանս արտասուալից. պայծառացո Տէր ։

ՄԾ. Սիւն լուսոյ և ամպ հովանի սուրբ կոյս որ ցօ-

ՈՂՈՐՄԵԱ ԱՁ

Ի խորանի քում սրբութեան զոր ընտրեցեր գա-լըստեամբըդ քո Քրիստոս. ‖ Ի սմա միաձայնեալ ա-ղաչեմք ըզքեզ. լուր ձայնի աղաչանաց մերոց ընկալ եւ կեցո ըզմեզ: Աստուածային լուսով քո. պայծառ քան զարեգակն լուսաւորեցեր զքո սուրբ զեկեղեցի. Ի սմա: Այսօր և հրեշտակք ուրախանան ընդ պայ-ծառութիւն քո սուրբ եկեղեցւոյ. Ի սմա:

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԱՁ

Ի տաճարի սրբութեան փառաց քոց Քրիստոս զոր ի յերկնից լուսաւորեցեր աստուածային ծագմամբ. Ի սմա ըզքեզ անդադար բարեբանեսցուք: Որ ըզ-խորհուրդըս փրկական աստուածգիտութեան. շնոր-հեցեր մեզ ի ձեռըն քահանայապետին քո և վըկայի. Նորին աղաչանօք խընայեա ի մեզ: Զհաւատացեալ ժողովուրդըս սուրբ Երրորդութեանդ. եւ զապաւի-նեալս ի խորան փառաց քոց. պահեա անխըռով ի խաղաղութեան:

Առաւօտու երգ Եկեղ. Տան քում: Տէր թագաւորեաց: Քարոզ Ասասցուք:
ՄԱՆԿՈՒՆՔ ԱԿ. Սեղան քո Տէր զօրութեանց: 157:
Զինի Մանկանցն Քար. Սուրբ եկեղեցեաւս: Կեցո. Յայնժամ:
Աւետ. Առ դրան սուրբ տաճարիս:

---

ՅԵՐԵԿՈՅԻՆ

ՄԵՍԵԴԻ Եկեղեցւոյ. Աստ օրհնեցէք: Ո կայք ի տան:
Զինի Սուրբ Աստուածինն ըզինուան շարական տէրունեան և յարութեանն եղանէն խաչին և աւետարանաց ծննդոց և մկրտչինոց և ամենայն զօրքաց և այլն
ՀԱՄԲԱՐՁԻ ԱՁ. Որ զանարատ: Վեց տուն: 1006:
Զինի Քար. Սուրբ խաչիւս: Կեցո. Յայնժամ: Աղ. Պահպա:

---

Digitized by Google

# ԿԻՐԱԿԷ ԽԱՉՎԵՐԱՑ

## Ի ԳԻՇԵՐԻ

### ՀԵՏԵՒԱԿ ՇԱՐԱԿԱՆ ԴՁ

Զօրութիւն սուրբ խաչի քո Քրիստոս որ կանգ։ 656։ Քառ. Եւ ես խաղաղու։ Քահ. Օրհնութիւն։ Ե— ...

### ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԱՁ

Որ զանարատ բազուկըս քո ի խաչին տարածեցեր Քրիստոս Աստուած. եւ նշան յաղթութեան ետուր մեզ. || սովաւ ըզկեանըս մեր պահեա։ Որ զաշխարհակեցոյց բազկատարածութիւն խաչի քո Քրիստոս Աստուած. գաւազան զօրութեան ետուր մեզ. սովաւ։ Որ ըզմեռեալսն ի ճաշակմանէ փայտին յանցանաց. կենաց փայտիւըն կենագործեցեր. սովաւ։

✝ Սուրբ խաչն օգնական հաւատացելոց. կանգնեցաւ ի յերկրի յաղթող թշնամւոյն. եկայք ժողովուրդք երկրպագեսցուք։ Արարիչն Աստուած բարձրացաւ ի խաչին. եւ զմեռեալըս մեղօք փայտին ճաշակմամբն. ի սմին նորոգեալ կենդանացոյց։

Հրաշակերտ եւ զօրեղ փայտ խաչի քո Քրիստոս. գաւազան զօրութեան ի յերկրի երեւեալ. || եկայք ժողովուրդք երկրպագեսցուք։ Զոր Հրէիցըն ծածկեալ զանթաքչելի ըզգանձըն. փափագմամբ թագուհւոյն փայտ կենաց յայտնեցաւ. եկայք։ Սա է գէն յաղթութեան հաւատացելոց. մխոյեան եւ կնիք յաղթող ընդդէմ թշնամւոյն. եկայք։

Անճառելի երեւումն երեւեալ դըշխոյին. նշանելով յատենի յԵրուսաղէմ. խընդրէր ըզպատուական

փայտ խաչին յոր ըզՄեսիայն բեւեռեցին ։ Մեծասաստ հրամանաւն ժողովեալ Հրէից ցուցանելով նըմա ըզպատուական փայտ խաչին . յոր ելեալ բարձրացաւ արարիչն արարածոց ։ Ընդ յայտնել սրբոյ խաչին ի տեղւոջն սրբութեան . բուրմամբ անուշահոտ խնկոյ . եւ լցան տիեզերք մեծապէս պարգեւօք ։

ՅԱՐ. Զթագաւորըն փառաց Քրիստոս որ վասըն մեր մարմնացաւ ի սրբոյ կուսէն եւ խաչի համբերելով . Միաբանութեամբ երգով բարեբանեսցուք ։ Որ ըզթաղումն երեքօրեայ յանձն էառ . յարուցեալ ի մեռելոց ճշմարտութեամբ . միա ։ Կատարողապէս ըզդրունս դըժոխոց խորտակեաց . եկեղեցւոյ իւրում զգեցոյց զմեծ վայելչութիւն . միա ։

Բանդ որ ի Հօրէ իջեալ մարմնացար ի կուսէն . խաչեցար կամաւ Հօր վասըն մեր ըզմեղըս սպաներ . ‖ սուրբ Աստուած ողորմեա մեզ ։ Որ յարարածոց ես անբովանդակելի . ի խաչափայտին բեւեռելով ըզմահ կոխեցեր . սուրբ ։ Որ ի նախնումըն զանկեալն ի ծառայութիւն մահու . պատուական մարմնով և արեամբըդ քո ազատեցեր . սուրբ ։

Դու յանձն առեր Աստուած ելանել ի խաչ վասըն մեր . եւ ընդ նմին բեւեռել ըզհընութիւն մեղաց մերոց . վասն որոյ երկըրպագեմք եւ վերօրհնեմք ըզքո զանճառ խոնարհութիւնդ ։ Ի խաչելըն քո մեռուցեր ըզմահ և յաղբերէ կողի քո տիեզերաց արբուցեր զանմահութիւն ։ Յայգւոյդ անմահութեան ճաշակեցաք և տեսաք զի քաղցր և ուղիղ ես Տէր . և վասն ամենեցուն փրկութեան եկիր յաշխարհ ։

Հգ. Որ ի քրովբէական կառսըդ հանգչիս . այսօր

իջեր յերկնից ի դաս առաքելոցըն սուրբ Հոգի. ‖ օրհ-
նեալ ես Թագաւոր անման : Որ գընաս ի վերայ թեւոց
հողմոց. այսօր ի հրեղէն լեզուս բաժանեալ հանգեար
յառաքեալսըն սուրբ Հոգի. օրհնեալ : Որ խնամես
տեսչութեամբ զքո զարարածս. այսօր եկիր ի հաստա-
տել զեկեղեցի քո սուրբ Հոգի. օրհնեալ :

ՀՆ. Զհոգիս ծառայից քոց Քրիստոս. ընկալ ի դաս
անդրանկաց գրելոց ի յերկինս : Ընկալ վասըն սոցա
ըզբանաւոր պատարագս ի մէնջ. եւ շնորհեա նոցա
ըզթողութիւն զատանել յաւուրն յետնում : Հաշտեա ի
ձեռըն սուրբ մարմնոյ և արեան քո Տէր. եւ պարգե-
ւեա նոցա դասել յաջակողմեանըն քո :

ՄՏ. Որ ըզբանն Աստուած բանական եղեր ընդու-
նել յորովայնի միշտ կոյս. ‖ զքեզ մեծացուցանեմք որ
օրհնեալդ ես ի կանայս : Որ էիցս լուսոյն արժանի
եղեր բանալոյ ի գիրկըս քո մարմնով. զքեզ : — Փառք
Հօր : Անսարատ տաճար տընօրէնութեան կոչեցար Հոգ-
ւոյն սըրբոյ միշտ կոյս. զքեզ :

— Այժմ և միշտ : Ի միւսանգամ գալըստեան Աս-
տուածորդւոյն. սուրբ խաչն երեւի եւ լուսաւորէ.
զի նա է յոյս հաւատացելոց :

Ալէլուիա խունչէ է յոյնէն :

---

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԳԿ

Այսօր պատուական խաչիւ քո պարեցուցեր ըզժո-
ղովուրդըս քո. որ է զաւազան զօրութեան եւ փայտ
կենաց ‖ Աստուած հարցըն մերոց : Քանզի անմահա-
ցաք կենացըն փայտիւ. ի ճաշակմանէ մահաբեր պըտ-
ղոյն. որ կանգնեցաւ քառակերպն ի միջակին դիտե-
լով ընդ հարաւ Աստուած : Եւ համբարձար կամաւ ի

խաչ քո Քրիստոս. տարածեցեր ըզբազուկըս քո. ժողովել ըզհեռացեալ ազգ մարդկան առ քեզ Տէր Աստուած ։

Գ. ԸզՏէր օրհնեցէք ‖ Առաւել բարձր արարէք ըզնա յաւիտեանս ։ Այսօր Որդին միածին. զանարատ բազուկըս իւր. տարածեաց ի վերայ սուրբ խաչին. առաւել ։ Քանզի յաղթեաց մահու հըզօր զօրութեամբ. եւ կոչեաց ըզտիեզերս ի փըրկութիւն եւ ի կեանսըն յաւիտենից. առաւել ։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԳԿ

Մայր և կոյս աղախին Քրիստոսի որ բարեխօս ։ 246 ։

Գիշերի

Այսօր ելկեալ կամաւ Տէրն ի խաչ. եւ տարածեաց զբազուկս իւր ի նմա ։

ՈՂՈՐՄԵԱ ԳՁ

Փայտ կենաց որ փոխանակ մահացու պըտղոյն. ըզՔրիստոս պըտղաբերեցեր. ‖ պարըսպեալ պահեա զուխտս հաւատացելոց ։ Քեւ բացաւ մեզ ճանապարհ ծառոյն կենաց. ի սրովբէափայլ պահպանութենէն. պարըսպեալ ։ Քեւ ազատեցաւ նախահայրն ի ճաշակմանէ պըտղոյն. եւ քեզ երկըրպագեն ամենայն հաւատացեալք. պարըսպեալ ։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԳՁ

Անուանեալ փայտ գիտութեան ըզմեզ ի կենացըն հանեալ արտաքսեցոյց. որով յանցեաւ մայրն Եւա եւ պատրեաց ըզնախահայրն ։ Իսկ փայտ խաչի քո կենսատու. գաւազան զօրութեան կենաց մարդկան եւ յոյս հաստատութեան. առաջնորդ եղեւ մեզ ի կեանսըն յաւիտենից ։ Ետուր մեզ նշան յաղթող սուրբ զխաչ քո. զի սովաւ մըտցուք ընդ նեղ դուռն անձկա-

իջեր յերկնից ի դիմաս առաքելոցըն սուրբ Հոգի. ‖ օրհ-նեալ ես Թագաւոր անման է։ Որ գընաս ի վերայ թեւոց հողմոց. այսօր ի հրեղէն լեզուս բաժանեալ հանգեար յառաքեալսըն սուրբ Հոգի. օրհնեալ։ Որ խնամես տեսչութեամբ զքո զարարածս. այսօր եկիր ի հաստա-տել զեկեղեցի քո սուրբ Հոգի. օրհնեալ։

ՀՆ. Ջհոգիս ծառայից քոց Քրիստոս. ընկալ ի դիմաս անդրանկաց գրելոց յերկինս։ Ընկալ վասըն նոցա ըզբանաւոր պատարագս ի մէնջ. եւ շնորհեա նոցա ըզթողութիւն գտանել յաւուրն յետնում։ Հաշտեա ի ձեռըն սուրբ մարմնոյ և արեան քո Տէր. եւ պարգե-ւեա նոցա դասել յաջակողմեանըն քո։

ՄԾ. Որ ըզԲանն Աստուած բանական եղեր ընդու-նել յորովայնի միշտ կոյս. ‖ զքեզ մեծացուցանեմք որ օրհնեալդ ես ի կանայս։ Որ էից լուսոյն արժանի եղեր բառնալոյ ի գիրկըս քո մարմնով. զքեզ։ — Փառք Հօր։ Անարատ տաճար տընօրէնութեան կոչեցար Հոգ-ւոյն սըրբոյ միշտ կոյս. զքեզ։

— Այժմ և միշտ։ Ի միւսանգամ գալըստեան Աս-տուածորդւոյն. սուրբ խաչն երեւի եւ լուսաւորէ. զի նա է յոյս հաւատացելոց։

Ալէլուիա խաչէ է յայնէն։

---

ՅԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԳԴ

Այսօր պատուական խաչիւ քո ապրեցուցեր ըզժո-ղովուրդըս քո. որ է զաւազան զօրութեան եւ փայտ կենաց ‖ Աստուած հարցըն մերոց։ Քանզի անմահա-ցաք կենացըն փայտիւ. ի ճաշակմանէ մահաբեր պըտ-ղոյն. որ կանգնեցաւ քառակերպն ի միջակէն դիտե-լով ընդ հարաւ Աստուած։ Եւ համբարձար կամաւ ի

խաչ քո Քրիստոս. տարածեցեր ըզբազուկըս քո. ժողովել ըզհեռացեալ ազգ մարդկան առ քեզ Տէր Աստուած ։

Գ. Ըզ Տէր օրհնեցէք ‖ Առաւել բարձր արարէք ըզնա յաւիտեան ։ Այսօր Որդին միածին. զանարատ բազուկըս իւր. տարածեաց ի վերայ սուրբ խաչին. առաւել ։ Քանզի յաղթեաց մահու հըզօր զօրութեամբ. եւ կոչեաց ըզտիեզերս ի փըրկութիւն եւ ի կեանսըն յաւիտենից. առաւել ։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԳԿ

Մայր և կոյս աղախին Քրիստոսի որ բարեխօս ։ 246 ։

Գէշէրէ

Այսօր ելեալ կամաւ Տէրն ի խաչ. եւ տարածեաց զբազուկս իւր ի նմա ։

ՈՂՈՐՄԵԱ ԳԶ

Փայտ կենաց որ փոխանակ մահացու պըտղոյն. ըզՔրիստոս պըտղաբերեցեր. ‖ պարըսպեալ պահեա զուխտս հաւատացելոց ։ Քեւ բացաւ մեզ ճանապարհ ծառոյն կենաց. ի սովրէափակ պահպանութենէն. պարըսպեալ ։ Քեւ ամաչեցաւ նախահայրն ի ճաշակմանէ պըտղոյն. եւ քեզ երկըրպագեն ամենայն հաւատացեալք. պարըսպեալ ։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԳԶ

Անուանեալ փայտ գիտութեան ըզմեզ ի կենացըն հանեալ արտաքսեցոյց. որով յանցեաւ մայրն Եւա եւ պատրեաց ըզնախահայրն ։ Իսկ փայտ խաչի քո կենսատու. զաւազան զօրութեան կենաց մարդկան եւ յոյս հաստատութեան. առաջնորդ եղեւ մեզ ի կեանսըն յաւիտենից ։ Ետուր մեզ նըշան յաղթող սուրբ զխաչ քո. զի սովաւ մըտցուք ընդ նեղ դուռն անձկա-

ցեալ ճանապարհին. ո՛րում ցանկայի՛ն ե՛րկրածին որ-
դի՛ք մարդկա՛ն:

Առաւօտու Երգ խաղ. Ետուր երկիւ: Որպէս փրկեցան:
Քարոզ Ասասցուք:
Զինչ Սուրբ Աստուածին (չքենան միաբան տաճարեայն և եկանեն խաղի և աւետարանաւ, մոմեղինօք և ամենայն զարդու է դասը ասելով)

## ՇԱՐԱԿԱՆ ԱՁ

Որ զանարատ բազուկս քո ի խաչ: Երեք տուն: 1006:

## ԶԻՆՉ ՍԱՂՄՈՍ Դ. է Նե

Կ8. Նշանեցաւ առ մեզ: Փխ. Ի կարդալ իմում: 438:
Ալէլուիա. ալէլուիա:

### ԸՆԹերցուած յԱռակաց: ԺԴ. 1:

Դարձեալ եթէ ի նաւ ելեալ ոք՝ ընդ ամեհի ալիս կա-
միցի ճանապարհորդել, առ փայտն որ քան զնաւաւփայտն
տկարագոյն է աղաղակէ: Զի զայն թէպէտ և ցանկու-
թիւն շահից հնարեցաւ՝ և ճարտարապետ իմաստութեամբ
կազմեաց, սակայն քո Հայր, վարէ տեսչութիւնդ. զի ե-
տուր և ի ծովու ճանապարհ, և ի մէջ ալեաց շաւիղ ըն-
թացաւոր: Ցոյց արարեալ՝ թէ յամենայնի կարող ես
փրկել, թէպէտ և առանց ճարտարութեան ոք ելանիցէ ի
վերայ: Բայց կամիս զի մի՛ դատարկասցի գործ իմաս-
տութեան. վասն այնորիկ չնչին փայտի հաւատան մար-
դիկ զանձինս իւրեանց, և շրջեալ ընդ ալիսն դոյզն լաս-
տիւն ապրեցան: Քանզի և իսկզբանէ ի կորնչել սկայիցն
ամբարտաւանից, յոյս աշխարհի ի լաստափայտն ապաւի-
նեալ, եթող աշխարհի զաւակ լինելոյ քո ձեռամբդ նա-
ւապետեալ: Զի օրհնեալ է փայտն որով լինի արդարու-
թիւն, և ձեռագործն անիծեալ, ինքն և որ արար զնա.
զի նա արար, և սա եղծանելի աստուած անուանեցաւ: 8:

### ԸՆԹերցուած յԻզեկիէլէ մարգարէէ: Թ. 2:

Եւ ահա արք վեց գային ընդ ճանապարհ բարձու դրա-
նըն՝ որ հայի ընդ հիւսիսի, և իւրաքանչիւր տապար ի
ձեռին իւրում. և այր մի ի մէջ նոցա զգեցեալ պճղնա-
ւոր, և կամար ականակապ յականց շափիղայ ընդ մէջ
իւր. և մտին կացին առաջի պղնձի սեղանոյն. և փառք

Աստուծոյ Իսրայէլի վերացան ի քրովբէիցն յօդն որ ի մէջ տաճարին։ Եւ կոչեաց զայրն որ զգեցեալ էր զպըճըղնաւորն, և ունէր զկամարն ընդ մէջ իւր, և ասէ ցնա Տէր. անց ընդ մէջ քաղաքիդ Երուսաղեմի, և դիր նշան ի ճակատ արանցդ որ հեծեն և յոգոց հանեն ի վերայ անօրէնութեանցն գործելոց ի մէջ դոցա։ Եւ ցնոսա ասէ՝ ինձ լու ի լու. գնացէք զհետ նորա ի քաղաքն՝ և կոտորեցէք. և մի՛ խնայեսցեն աչք ձեր, և մի՛ ողորմեսջիք ծերոյն և տղայոյն, կուսին և երիտասարդին. և զկանայս կոտորեսջիք ի սատակումն. բայց յորոյ վերայ նշանն իցէ՝ մի՛ մերձենայցէք. և սկիզբն՝ ի սրբութեանց իմոց արասջիք. և սկսան յարանց ծերոց որ էին ի ներքս ի տաճարին։ 6։

Պօղոսի առաքելոյն ի կորնթացւոց առաջին թղթոյն է ընթերցուած: Ա. 18:

Զի ճառ խաչին կորուսելոցն յիմարութիւն է, այլ փըրկելոցս մեզ զօրութիւն Աստուծոյ։ Զի գրեալ է. կորուսից զիմաստութիւն իմաստնոց, և զխորհուրդս խորհրդականաց արհամարհեցից։ Ո՞ւր իմաստուն, ո՞ւր դպիր, ո՞ւր քննիչ աշխարհիս այսորիկ. ո՞չ ապաքէն յիմարեցոյց Աստուած զիմաստութիւն աշխարհիս այսորիկ։ Քանզի իմաստութեամբն Աստուծոյ ոչ ծանեաւ աշխարհ իմաստութեամբն զԱստուած, հաճեցաւ Աստուած յիմարութեամբ քարոզութեանն ապրեցուցանել զհաւատացեալս։ Իսկ որովհետև Հրեայք նշան հայցեն, և հեթանոսք իմաստութիւն խնդրեն, մեք քարոզեսցուք զխաչելեալն Քրիստոս՝ Հրէից գայթագղութիւն և հեթանոսաց յիմարութիւն. բայց նոցին իսկ կոչեցելոցն Հրէից և հեթանոսաց՝ զՔրիստոս՝ Աստուծոյ զօրութիւն և Աստուծոյ իմաստութիւն։ 24։

Զայնէ– Ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա.

Նշանեցաւ առ մեզ լոյս երեսաց քոց, և ետուր ուրախութիւն սրտից մերոց։

Ալէլուիա, Օրթի

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի։ ԻԴ. 27։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս ասէ.

Զի որպէս փայլակն՝ որ ելանէ յարևելից՝ և երևի։ 326։

Digitized by Google

(Քար. Ես եմ խաղաղ։ Վասն ի վերուստ։ Եւ զհամբե-
րելեն զանդրադարձն և զաշխարհս։ Զկնի Քար. Սուրբ խաչիւ.
Աղ. Պահպանեա։ Եւ է դառնալն առին)

Նորաստեղծեալ։ Քար. Խնդր։ Կեցո. Յոյնժ։ Աղ. Քում։

(Եւ ապա զնեն զսուրբ խաչն և զաւետարանն ի միջոյ եկեղեցւոյ
և երկրպագեալ նմա ժողովրդեան խնկարկութեամբ առնել

ՇԱՐԱԿԱՆ ԲԳ

Խաչի քո Քրիստոս երկրպագանեմք և ըզխա ։ 497։)

---

ՅԵՐԵԿՈՅԻՆ

Ժողովքն է դասն եկեղեցւոյն, և ժամարարաց կարգն կատա-
րեն։ Եւ առ Աստուած։ Եւ այլ ող եղանակն խաչի է Մարգար Թիլ
է Տեառնընդառաջ. և անդ է Մաշտոցորդ ։

ՄԽՍԽԴԻ Խաչի. Ետուր երկիւղ։ Որպէս փրկեցան։
Քարոզ Ասասցուք։

ՀԱՄԲԱՐՁԻ ԴՁ

Զօրութիւն սուրբ խաչի քո Քրիս։ Վեց դասն ։ Ի ձեռք։
Քար. Սուրբ խաչիւս։ Կեցո. Յոյնժ։ Աղ. Պահպանեա։

---

# ԵՐԿՈՒՇԱԲԱԹԻ
## Տօն Խաչի

### Ի ԳԻՇԵՐԻ

ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԴՁ

Զօրութիւն սուրբ խաչի քո Քրիստոս. որ կանգնեցեր ի փրկութիւն աշխարհի. ‖ սա պահեաց ըզմեզ յամենայն փորձութենէ։ Քանզի ի սմա բարձրացար Աստուած. և ի սմա հեղեր ըզպատուական սուրբ զարիւնդ. սա։ Եւ ըզքո միասնգամ ըզգալուստըդ. նըշանաւ խաչի քո յուցեր աշխարհի. սա։

† Ի ստունգաններն Ադամայ ի կենագործ ի դրախտին. խաբեամբ պատրանօք փայտին ծառոյն գիտութեան. օձաջամբ պատրանօքըն ճաշակեալ ի պըտղոյն. և եղեւ վայրաբնակիլ մայրաքաղաքն Երուսաղէմ։

Արեւելք ի դրախտին ընծայեցին ըզփայտ խաչին եւ եկեալ կատարիւր ի տեղւոջ կառափելման. բարձրանայր ի գլուխն տարրեղէն փայտակերտըն. սուրբ քառաթեւըն պահապանն անձանց մերոց։

ՑԱՐ. Թագաւոր Քրիստոս. Էակից Հօր եւ Հոգւոյն. որ վասըն մեր մարմնացար ի սուրբ կուսէն. || Թագաւոր փառաց Քրիստոս քեզ փառք։ Որ կամաւոր մահուամբ ըզմահ մեռուցեր. եւ անապական յարութեամբըդ քո նորոգեցեր զաշխարհս. Թագ.։ Որ կենդանարար արեամբըդ քո լուսաւորեցեր սուրբ զեկեղեցի. երգեմք քեզ ընդ հրեշտակս ասելով. Թագաւոր։

Ողորմեա փրկիչ։ Որ կամաւ Հօր ըզչարչարանըս յանձն առեր Բանդ Աստուած. Ողոր.։ Որ հաւասար սուրբ Հոգւոյն. ըզգերեալըսն փրկեցեր քո յարութեամբըդ. Ողոր.։

Ի խաչ ելեր Բանդ Աստուած մարմնացեալդ ի կուսէն կամաւ Հօր եւ Հոգւոյն ի փրկութիւն ազգի մարդկան։ Ի գերեզմանի եդար անապական. զի զմեռելութիւնըս մեր բարձեր ըզգերեալըսն փրկեցեր ի ձեռաց մահու։ Եւ յերրորդ աւուր յարեար աստուածապէս ի յերկինըս համբարձար ընդ աջմէ Հօր նըստար. փառաւորեալդ ի հրեշտակաց եւ երկրպագեալդ ի սերովբէից։

Որ ի յերկնից ի Հօրէ իջեր անըսկիզբն Որդի. նոյն ինքն ըզդըժոխս աւերեցեր. || Ողորմեա մեզ Աստուած։ Որ ըզճառագայթս աստուածութեանդ երեւեցուցեր Փրկիչ. ըզպահապանսըն զարհուրեցուցեր. Ող.։ Որ ձեռաքըն Թովմայի շօշափեցար Փրկիչ. առ աշակերտսըն մըտեր դրաքըն փակելովք. Ող.։

Digitized by Google

Որ մանկունս խաչիւն ձեռով կենդանացոյց ըղձահա-ցեալսն եւ մարմնոյն ձեր բեւեռմամբ ընկղմապանըս մա-հու եղծ. ամենեքեան երգեսցուք զի փառաւորեալ է: Բոցով սըրտմըտութեամբ քո Քրիստոս. ի խաչէ ծն կիզեր ըզբանսարկուին բըռնութիւնն. եւ կենարար յա-րութեամբ քո զեկեղեցի քո փըրկեալ. փառըս քեզ վեր-առաքել ուսուցեր: Որ փոխանակ զանընութեան տըներկրոյն Նըդեմայ. ըղխայծ քո ետուր մեզ Քրիստոս և մըրբուցեր ի կողաձոյն աղբերէդ. զանըղապատ եւ զան-վախճան ուրախութիւնն:

Հգ. Կենդանարար Աստուածն մարդացեալ Հօր Որդի. ըն-ծողովեալսըն միաբանաւ կան սիրով. լուսաւորեցեր հրեղինօք լեզուօք. Վասն որոյ եւ մեք այսօր տօ-նեմք ըզգալուստ քո սուրբ: Զուարճացան քո զօ-լըատեամբըն սուրբ առաքեալքն. կոչելով ի մի-սին ըզցըլուեալսն ի միմեանց բազմաձայն լե-զուօք. վասն: Հոգեւորական սուրբ մըկըրտու-թեամբ. զարդարեցեր նոքօք ըզտիեզերս ի զգեստ լուսափայլս եւ նորափետուրս. վասն որոյ եւ մեք այսօր տօնեմք ըզգալուստ քո սուրբ:

Հն. Փառըք քեզ Հայր. որ կենարարդ ես մարմնոց եւ գոյացուցիչ հոգւոց. Ընկալ զօրհնաբանողս հաշտ-յանմահական քո հանգիստ: Մարդասէրդ Հօր Որդի. որ պատկերակից եղեր հողեղինացս եւ խաչեցար. ըն-կալ: Ամենազօր սուրբ Հոգի. որ անդորրիչ ես նե-ղելոց եւ մըխիթարիչ հոգւոց. ընկալ:

ՄԾ. Մայր լուսոյ Մարիամ սուրբ կոյս. որ ըզլոյսն ան ի Հօրէ ծընար մարմնով. եւ եղեր արեւելք արեգա-կանն արդարութեան. Հոգեւոր երգով ըզքեզ Սըր-բուհի մեծացուցանեմք: Քերովբէից գերագոյն

էին աթոռ. եւ ծառ կենաց անմահական պտղոյն. տապանակ կտակի բանին եւ սափոր ոսկի երկնային մանանային. հոգեւոր: — Փառք Հօր: Քեւ բացաւ սրովբէական դուռըն դրախտին. եւ քեւ տըւաւ մեզ փայտն անմահութեան. զոր ի նմա զենեալն անմահ այսօր յերկնից լուսաւորեաց. հոգեւոր:

— Այժմ եւ միշտ: Բանն անեղ համագոյ որ ընդ Հօր եւ սուրբ Հոգւոյն երեւեալ ի յերկրի պայծառացան արարածք. հըզօրին կարողութեամբ եւ ըզմեզ վերագրեաց յորդեգրութեան շընորհս:

Ալէլուիա խաղն է յայնէն:

ՅԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԴՁ

Այսօր ընդ ամպս լուսաւորս երեւ: Իոյր ասրօէն: 654:
Աստուածային Երգ խաղ. Եկայք երկիր: Որպէս փրկեցան:
Քարոզ Աստուածուք:
ՄԱՆԿՈՒՆՔ խաղ է յոր յայն ու լինի:
Զկնի Քար. Սուրբ խաչ: Կեցո. յայնժմ: Աղ. Պահպանեա:

ՅԵՐԵԿՈՅԻՆ

ՄԵՍԵԴԻ խաղ. Եկայք երկիրպագ: Որպէս փրկեցան:
Քարոզ Աստուածուք. ասա յամենօրէա խաղ:

ՀԱՄԲԱՐՁԻ ԲԿ

Խաչն կենարար որ եղեւ մեզ փրկու: Վերջ ասա: Ի վերայ:
Քարոզ Սուրբ խաչիւս: Կեցո. յայնժմ: Աղ. Պահպանեա:

# ԵՐԵՔՇԱԲԱԹԻ
## Տօն Եկեղեցւոյ

ԻԳԻՇԵՐԻ

ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԲԿ

Խաչըն կենարար. որ եղեւ ըմեզ փրկութեան. առավաւ ամենեքեան ըզքեզ բարեբանեմք:

Որ ի Հօրէ լուսոյ լոյս ճառագայթեալ ի յերկիր եւ զաւազան զօրութեան հաստատեցեր. Օրհնեալ ա-մենեքեան ընդ քեզ բարեբանեմք։ Որ լու-սափայլ ծագմամբ հրաշափառապէս ընդ մեզ ցու-ցաւ ի յօգնութիւն ընդդէմ թշնամեացն. օրհնեալ։

Որ յաթոռ փառաց նստիս Բանդ Աստուած. խո-նարհեցար ի հայրական ծոցոյ ի ծառ մարմին ի կու-սէն. վերականգնելով ի տեղի ըստորանկեալ լուսոյն զհողացեալ բնութիւնս։ Որ կանգնեցեր ըզխաչ քո ի մէջ երկրի. եւ սովաւ ըզսրովբէափակ դուռն դրախ-տին բացեր նախաստեղծին. կենագործելով ի ճաշակ-մանէ մահաբեր պտղոյն։ Եւ զօրութեամբ խաչի քո Քրիստոս. հիմնեցուցեր զկաթուղիկէ եկեղեցի բընա-կարան սուրբ Երրորդութեանդ. լուսաւորելով ըզհե-թանոս ի սմա կըրկնակի ծնընդեամբ։

ԳՁ

Սրբութիւն սրբոց շնորհեցեր եկեղեցւոյ սուրբ ըզխաչ քո Տէր. քանզի հեղուսիւք ձըգմամբ անարատ ձեռին քո ի սմա. համահաւասարեալ առ քեզ զհամօրէն սեռից բանական կենդանեաց. Աղաչեմք ըզքեզ Տէր. պահպանեա ըզմեզ ընդ հովանեաւ խաչի քո սուրբ։ Տեսիլ անճառելի խորհրդոյն զոր յառաջա-գոյն ցուցաւ լուսածին սուրբ նշանն. քանզի սերով-բէն բոցեղէն հրանիւթ պարունակէր. ի մէջ պայ-ծառի եւ վայելուչ դրախտին. աղաչեմք։ Երկնաչափ ցուցաւ սանդուխք իմանալի ճանապարհ առնելով որդ-ւոց մարդկան ընդ դուռն կենաց մտին. քանզի խորհրդեամբ ցուցաւ ըզքանչելեաւն Յակոբայ. Եր-կնաւոր զօրացն էջք եւ ելք սրբարան. աղաչեմք։

✝ Փայտ կենաց ըզսա հոգեւորին վերադարձեաց զե-

բանհրաշ ի մանստունն. քանզի արարիչն արարածոց բարձրացաւ ի սմա. եւ կողահոս շիթք անապական արեանն ընկողմնին ջընջեաց ըզմեղս. ‖ Աղաչեմք ըզքեզ Տէր. պահպանեա ըզմեզ ընդ հովանեաւ խաչի քո սուրբ: Առաջնորդ ցուցաւ սիւնատեսիլ փայլմամբ ժողովրդեանն Իսրայէլի. գաւազանասաստ հերձմամբ ըզլեռնացեալ ըզկուտակումն ջուրցն. ի կարծրութիւն փոխարկեալ վիմի. աղաչեմք: Ներգործեալ հրաշըս խաչանիշ համբարձմամբ ձեռացըն Մովսեսի ընդդէմ Ամաղեկայ. ի մարտի պարտէր ըզբելիար. եւ ձուլադրոշմըն ձուլիւք ենթադրեալ կործէր. աղաչեմք:

† Նշանաւ խաչի քո Տէր սարսեալ հալածեցաւ աշխարհակալն խաւարն. քանզի զմեղուցեալ ըզմարդըն յանցանօք փայտին կենաց. խաչակից առնելով պըսակեցեր ամենայաղթ սուրբ նշանաւդ. ‖ Աղաչեմք ըզքեզ Տէր. պահպանեա ըզմեզ ընդ հովանեաւ խաչի քո սուրբ: Որ ի վերջնումն աւուրն համարօտի լուծանէ ժողովեալ զիւր ըզկարծեցեալ ճաճանչն. եւ անհեղահրաշ ճառագայթիւք ցոլանայ յերկնից գերահրաշ նըշանն. եւ հեծեալ կոծին ամենայն ցեղք անհաւատից. աղաչեմք:

Քեզ Քրիստոսի կաթուղիկէ եկեղեցւոյ շնորհողի. զյաղթական ըզպատուական զաստուածընկալ սուրբ նըշանս. մատուցանեմք զօրհներգութիւն միշտ ի բարձունս: Սա կամաւ քո Քրիստոս եւ թեւօք ամենազօր սուրբ Հոգւոյն. եւ դասուք հրեշտակաց թռուցեալ եկաւորի. ի լեառըն Վարագայ բընակել ի նմա: Եկայք ժողովուրդք. երկըրպագեսցուք աստուածային սուրբ նըշանիս. համբարձէք միաբան ըզձեռըս ձեր

ի սըրբութիւն. եւ ըղձնականն ի սմա մեր ջնջել փառա- ւորեսցուք:

Անուանեալ փայտ գիտութեան ըզմեզ ի կենա- ցըն հանեալ արտաքսեցոյց. որով յանցեալ մայրն Եւա եւ պատրեաց ըզնախահայրըն: Իսկ փայտ խաչի քո կենսատու. զանազան զօրութեան կենաց մարդկան եւ յոյս համատարածութեան. առաջնորդ եղեւ մեզ ի կեան- սըն յաւիտենից: Տուր մեզ նըշան յաղթող սուրբ զխաչ քո. զի սովաւ մըտցուք ընդ նեղ դրան անձկա- ցեալ ճանապարհին. որում ցանկային երկրածին որ- դիք մարդկան:

ՀԳ. Արեգակն արդարութեան Քրիստոս ծագեալ յա- խաւարս հալածեաց ըզխաւարն անգիտութեան. եւ յետ մահու եւ յարութեան համբարձաւ առ Հայր յոր- մէ ծագեաց. որ երկըրպագի յերկնաւորաց եւ յերկրա- ւորաց ընդ Հօր եւ սուրբ Հոգւոյն. Վասն որոյ և մեք երկըրպագանեմք Հօր Հոգւով եւ ճըշմա- րտութեամբ: Որ փոխանակ ծոցածին Բանին որ ել յերկինս. առաքեցաւ աւետիքըն Հօր ի բարձանց Հո- գին ճըշմարտութեան. մըխիթարել զորս յԱդամայ աղը- մեցելոց եւ հրագինել զընտրեալ դասս առաքելոցն. վասն: Այսօր տըրտմականն և գիշերային լուծան եր- կունք ծնընդեան նախամօրն. քանզի զծնեալըն մար- մնով ի մահ եւ յապականութիւն. վերըստին ծնանի Հոգին յորդիս լուսոյ Հօրն երկնաւորի. վասն:

ՀԵ. Արարչագործ Աստուած. որ յոչընչէ գոյացու- ցեր զերկինս եւ զերկիր. օրհնեմք ըզքեզ. որ հանգուցիչդ ես ննջեցելոց Հայր անմահական: Բանդ Աստուած և համագոյ փառաց Հօր պատկեր. գովեմք ըզքեզ որ յարութիւնդ ես ննջեցելոց Որդիդ մի-

Digitized by Google

ծին ։ Աղբիւր անըսպառ յորդէ բաշխի տիեզերականն շընորհք․ բարեբանեմք ըզքեզ․ որ նորոգող ես նընջեցելոց Հոգիդ ճըշմարիտ ։

Մծ․ Աստուածածին երկնային դուռն աստուածային ձայնիւն աւետարանեցեր հրեշտակն․ Ուրախ լեր բերկրեալդ Տէր ընդ քեզ․ Ի քերովբէս բազմեալ ընդ Հօր անապականաբար բնակել հաճեցաւ ի քում յորովայնի․ ուրախ ։ — Փառք Հօր ։ Որ բոցեղէն սրովբէիւք շըրջափակեալ պահիւր․ այսօր ի մէջ մարդկան ի գիրկըս հողեղինի յայտնեալ ուրախ ։

— Այժմ և միշտ ։ Սըրբուհի Աստուածածնին բարեխօսութեամբ․ ընկալ Տէր ըզմաղթանըս մեր․ յորժամ յարուցելոց լուսածագիս անճառ հրաշիւք․ կարապետս առնելով զյաղթանակն սուրբ նըշանն․ աղաչեմք ըզքեզ Տէր․ պահպանեա ըզմեզ ընդ հովանեաւ խաչի քո սուրբ ։

Ալէլուիա Եկեղեցւոյ է յայտնի ։

---

ՅԱՌԱՒՕՏՈՒ ՀԱՐՑ շնորհակալք ԴԶ․ Ուրախ լեր այսօր սուրբ եկեղեցի ։ Իւր տեղւոջն ։ 948 ։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԴԶ․ Ուրախացիր Աստուածա ։ 265 ։
Ալէլուիա Եկեղեցւոյ․ Տան քում ։ Տէր թագաւոր ։
Քարոզ Առաւօտուց ։
ՄԱՆԿՈՒՆՔ խաչի է յայտնի ։
Ջրնի Քոր․ Սուրբ եկեղե ։ Կեցո․ յայտնի ։ Աղ․ Առ դրան ։

---

ՅԵՐԵԿՈՅԻՆ

ՄԵՍԵԴԻ Եկեղեցւոյ․ Աստ օրհնեցէք ։ Ո կայք ի տան ։
ՀԱՄԲԱՐՁԻ ԳԶ․ Ուրախ լեր սուրբ ։ Վեց տան ։ 843 ։
Քոր․ Սուրբ եկ ։ Կեցո․ յայտնի ։ Աղ․ Առ դրան սուրբ եկ ։

---

# ՉՈՐԵՔՇԱԲԱԹԻ

## Տօն Եկեղեցւոյ

Ի ԳԻՇԵՐԻ *ՕՐՀ*. ԳԶ. *Որպէս լեր սուրբ եկե*: 843:
*Ալէլուիա Եկեղեցւոյ է յայնէն*:
ՑԱՌԱՒՕՏՈՒ *ՀԱՐՑ* ԳԶ. *Այսօր պայծ*: *Խոր. [illegible]*: 846:
*ՄԵԾԱՑՈՒՍՑԷ* ԳԶ. *Որպէս լեր Աստուածա*: 651:
*Առաւօտու երգ Եկեղեցւոյ*. *Տան քում*: *Տէր Թագաւոր*:
*Քարոզ Ասասցուք*:
*ՄԱՆԿՈՒՆՔ Խաչի տաղ է յայնէն*:
*Ջնջէ Քարոզ Սուրբ եկեղե*: *կեցո*. *յայնէն*: *Աղ*. *Առ դրան*:

---

ՑԵՐԵԿՈՅԻ *Մեսեդի Եկեղեցւոյ*: *Ասա օրհնեա*: *Ո կայք*:
*ՀԱՄԲԱՐՁԻ ԲԿ*. *Անպատումն*: *Վէց [illegible]*: *Ի [illegible]*:
*Քար*. *Սուրբ եկեղեց*: *կեցո*. *յայնէն*: *Աղ*. *Առ դրան*:

---

# ՀԻՆԳՇԱԲԱԹԻ

## Տօն Եկեղեցւոյ

### Ի ԳԻՇԵՐԻ

### *ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԲԿ*

*Անպատումն կառք անքննելի խորհրդոյն ընդունարան ով սուրբ քահանայութիւն. Ի [illegible] աստուածա-թեւից յարաթեւոց սրովբէից անտեսանելի աստուածապատուեալ [illegible]. Քեզ երկրպագեմք յօգնութիւն մեզ ժամանեա յերկնից եւ ի մտաց: Անյաղթելի նշան անպարտելի զօրութեանն ընդունարան ով սուրբ քահանայութիւն. Ի [illegible] յանհարկութիւն ամբաստամբից ե-րեւեցար որք ի քէն աշխարհ սարսեալ դողան եւ ան-դընդային [illegible] կորնչին [illegible]. Քեզ: Ցանկալի [illegible] տեսեալ ընդ քեզ մարգարէն Զաքարիա. ոսկի եօթնաջահեան լուսով պայծառացեալ յերկրի ով սուրբ քահանայութիւն. Եւ [illegible] ի վերայ քո տարածեալ աննիւթ գոյին գոյացեալ ի մեծ[illegible]ր բարենութիւն. Եւ*

աղբերահոս կողիւ մաքրեաց զանդառնողութիւն ազգի մարդկան: Եւ: Քեզ:

† Ընդ երեւումն քո ի թագմանէ ով սուրբ քահանայութեան· Եւ յայնէ քումդ կարեան զունդք զօրաց բանաւորական եւ ընդ յառնել պատանւոյն զուարճացան հաւատացեալք· Եւ: Քեզ երկրպագեմք յօգնութիւն մեզ ժամանեա յերկնից եւ ի մեռեալս: Ի յերկրի երկինք եւ ի յերկինս մեզ անդրադարձ բարեխօս ով սուրբ քահանայութեան· Եւ յանձանկ և ի հրաշալի փայլմանցն կարապետ գոլով և նախագուշակ զանդրանիկն Որդւոյն Աստուծոյ· Եւ: Քեզ:

Որ համագոյգ ես Հօր և սուրբ Հոգւոյն· անբաժանելի էակ միութեան խոնարհեցար ի բարձանց եւ առեր մարմին ի կուսէն· յաղագս անկելոյն· յանդրանիկ կենաց բանաւորական խառնմամբ: Որ դատաւորդ ես ծածկելոց գիտող· այսօր ի հողոյ դատապարտեալ բարձար ի խաչ եւ լեղեաւ կերակրեցար· յաղագս անկելոյն· ի ճաշակմանէ մահաբեր պտղոյն: Որ կենդանութիւնդ ես ամենեցուն այսօր ընդ մահ խաչի ի յանձն առեր եղար ի սիրտ երկրի եւ յերրորդ աւուր յարեար· շնորհեա մեզ վերածիլ ընդ քեզ յանպատում ի կեանս:

Ի վերայ վիմի հաւատոյ շինեցեր զեկեղեցի· ընդ պահեա ի խաղաղութեան: Որ շնորհեցեր ողորմութիւն ի բնակարանս հրեշտակաց եւ մարդկան քաւարան· տուր սրբոց զանշարժ քո զխաղաղութիւն: Ի տաճարի փառաց սրբութեան քո քեզ երգեն մանկունք· տուր սոցա զառատ քո զողորմութիւն:

Եկայք ժողովուրդք ի տաճարի փառաց Քրիստոսի·

ուեալ բնութիւնս ի կեանս վերափոխեցեր ։ Ելեր Տէր
ա Հայր փառօք ի յերկինս ․ եւ մխիթարիչ առաքե-
լոյն առաքեցեր սուրբ զՀոգիդ ։ Բացեր Տէր այսօր
ըզգանձդ երկնային ․ եւ բաշխեցեր առատապէս պար-
գեւս մարդկան բնութեանս ։

ՀՆ․ Գալուստ է Միածնին փողով և փառօք Հօր ․ եւ
ըզՀողեղէն բնութիւնս հրեղէն նորոգէ ։ Լուսաւոր են
ճանապարհք արդարոց ․ և ի բիւրաւոր բանակըս
հրեշտակաց ամպովք ընթանան ։ Ի վերինն Երու-
սաղէմ թռչին ամպովք ընդ առաջ Տեառն յօդս ․
Եւ այնպէս յամենայն ժամ ընդ Տեառն լինին ։

ՄԾ․ Որ ողորմեցար ի մեղս ծնեալ մարդկան Հայր
երկնաւոր ըստ մարգարէին ․ եւ ետուր բնութեանս այ-
սօր պարգեւ ըզկոյսըն սուրբ ըզծնօղ Որդւոյդ միածնի ․
մաղթանօք սորա Տէր մեզ ողորմեա ։ Որ ցօղեցեր
ի մեզ յամպոյ ծորինաց Որդիդ այսօր զկոյսըն Մարիամ ․
յորմէ ծընար մարմնով եւ բարձեր նովաւ ըզմեղս նա-
խաստեղծին Ադամայ ․ մաղթանօք ։ — Փառք Հօր ։ Որ
նորոգեցեր Հոգիդ սուրբ ըզսիրտ եւ զարգանդ մօր քո
հաւատակցին ․ այսօր ամուլ ծնողաց նորին ետուր ըզ-
մայր Բանին զօրհնիչն Եւայի ․ մաղթանօք ։

— Այժմ և միշտ ։ Յորժամ յարուցեալ փայլես ան-
ճառ լուսով լուսաւորեա զհաւատացեալս ․ եւ դատա-
յարտես զազգըն Հրէից անհաւատիցն ով սուրբ քա-
մթեւ ․ Եւ [illegible] զիս լուսաւորեա ըզխաւարեալս մե-
ղօք եւ դատապարտեալ ի դասս մատենագրի յանճառ
երկնից յարքայութեան [illegible] նդ ․ զի անդադար օրհնա-
ենիս և քո են փառք յաւիտեանս ամէն ։

Ալէլուիա Եկեղեցւոյ է յոյնէն ։

---

ՅԱՌԱՒՕՏՈՒ ՀԱՐՑ շՏողոնակէն ասա ԳԶ. Այսօր ցըն-
ծան զասք հրեշտակաց ։ Իւր տուրծն ։ 898 ։
Առաջադաս Երգ. Տան քում վա ։ Տէր Թագաւորեաց։
Քարոզ Ասացուք ։
ՄԱՆԿՈՒՆՔ Խաղէ ասա է յայնէն ։
Զինի Քար. Սուրբ եկեղ ։ Կեցո. յայնէ ։ Աղ. Առ դրան

ՅԵՐԵԿՈՅԻ Մեսեդի Ենեղեց. Աստ օրհնեա ։ Ո կայք։
ՀԱՄԲԱՐՁԻ ԲԶ. Անապական ։ Ոսբ տան ։ Ի վեր։
Քար. Սուրբ եկեղեց ։ Կեցո. յայնէ ։ Աղ. Առ դրան։

# ՈՒՐԲԱԹ

## Տօն խաչի

### Ի ԳԻՇԵՐԻ

*ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԲԶ*

Անապական տուրբ ըզխաչն օրհնեսցուք. որ եղե-
ւ առաջնորդ աւազակին և յօրինեաց մեզ ճանապար
‖ որ ձեռնացոյց մեզ. սովաւ մըտանել ընդ դրան
անեղաշէն դրախտին Տեառն ։ Բանալի արքայու-
թեան տըւաւ հողածին մարդոյն. ուստի յառաջին
ճաշակմանէն արտաքս անկեալ էր յաւէժ կենդանու-
թեան ... ն որ ։ Գաւազանաձեւ երեւեալ եգիպտա-
կան ազգին. ցուցանելով ըզզօրութիւն սըրբոյ խա-
չին յափըշտակելով ըզգաւազանսըն դիւթական ...
որ ։ Դրօշմ ըզգայութեան օրինակեալ էր վերայ ճա-
կտոց դրանց նոցա. անարկիւղ պահելով ըզժողովուրդ
յանդրանկածախ սատակմանէ ... ն որ ։ Երեւե-
ադիւսանըման ակըն պատուական էր ձեռն խաչին. հեր-
ձանելով ըզծովըն կարմիր առաջնորդելով ժողովը-
դեանն սեամբ ամպոյ ը լոյսն անմեկնելի ... որ ։
† Որ նըշանաւ ամենայաղթ խաչի քո Քրիս-
տոս բարձեր զդատապարտութիւն ազգի մարդ-

Digitized by Google

կան։ Որ շնորհեցեր մեզ յաղթանակ ընդդէմ մամարտութեանց. վանել զզօրութիւնս թշնամւոյն։

Այսօր խնդրի պատուական փայտ խաչին տանդեալն ի Գողգոթայ ի ձեռն աստուածասէր դշխոյին. Եկայք հաւատացեալք երկրպագեսցուք աստուածային սուրբ նշանին։ Այսօր ընծայէ Գողգոթայ ըզծածկեալն ի յերկրի. վերաբերեալ անուշահոտ խընկովք ի ձեռն երանելւոյն Յուդայի. Եկայք։ Այսօր ի ձեռըն փրկական սուրբ խաչին կենագործի պատուանիւն մեռեալ. եւ ողբայ սատանայ ընկործանումն իւր. իսկ մեք Քրիստոսի հաւատացեալք երկրպագեսցուք։

Ապաւինեցաք ի խաչ քո արարիչ յաւիտենից. որ ետուր մեզ պահապան յաղթող ընդդէմ թշնամւոյն. Աղաչեմք սովաւ փրկիչ պահպանեա զանձինս մեր։ Բարձրեալ թագաւոր որ վասըն մեր ելեր ի խաչ. եւ բարձեր սովաւ զյանցանս նախաստեղծին Ադամայ. աղաչեմք։ Գլուխ սուրբ հաւատոյ եւ փայտ կենաց մարդկան յայտնեցաւ. զոր տեսեալ այսօրն պըղծոյ կործանեցաւ անկանգնելի. աղաչեմք։ Դողացաւ թըշնամին ընդ յայտնել սըրբոյ խաչին. եւ ի յահէ փառաց նորա կործանեցաւ յանդունդս երկրի. աղաչեմք։ Երկինք ցնծային եւ երկիրս ուրախանայր. քանզի փրկիչ ցուցաւ սուրբ խաչն եւ լուսատու տիեզերաց. աղաչեմք։

ՅԱՐ. Իջեր յերկնից Որդի Աստուծոյ ազատեցեր զարարածս. անկանիմ առաջի քո ողորմեա ինձ Աստուած։ Ի խաչին բեւեռեցար Աստըւած եւ ըզմարդն ի կապանաց մահու արձակեցեր. եւ զիս մի անտես առներ. որ մեղօքս եմ մեռեալ։ Ծագումըն Հօր յանմա-



Digitized by Google

տոյց լուսոյն որ ելեր ի գերեզմանէ. կենդանացուցեր զմարմնաւորս քո. եւ զիս մի անտես առներ. քանզի քեզ միայնոյ մեղայ:

Որ կամաւոր խաչելութեամբ քո Տէր բարձեր զամեղս. Ողորմեա բարերարանեւք ամենեցուն յարութիւն: Որ երեքօրեայ թաղմամբ քո Տէր մեռուցեր զմահ. ողորմեա: Որ լուսափայլ յարութեամբ քո Տէր կենդանացուցեր զաշխարհս. ողորմեա:

Ծանեաք ողորմեա Քրիստոս որ ի խաչին բեւեռեցար. եւ հեղմամբ արեանդ քո փրկեցեր զմարդկեղէնս. ծանեաք ոչ այլ Աստուած բայց ի քէն: Որ զամենարար բազուկս քո տարածեցեր ի վերայ խաչին. ժողովեա զհեռացեալսն ամենակարող զօրութեամբդ. Հաստատութիւն իմ լեր Տէր քոյով յարութեամբ: Տուօղ խաղաղութեան Քրիստոս որ զդատակնիք մահու լուծեր ի վերայ սուրբ խաչին. եւ հաշտեցուցեր զհայր ընդ արարածս. արարեր զխաղաղութիւն ի յերկինս եւ ի յերկրի:

ՀԳ. Նոյն եւ նման Հօր եւ Որդւոյ Հոգիդ անեղ է համագոյ. բղխումն Հօր անքննաբար առեալ յՈրդւոյ անճառաբար. Ի վերնատունն այսօր իջեր զՀոգիդ շնորհաց քոց արբուցեր. Արբո և մեզ ողորմութեամբ ի բաժակէդ իմաստութեան: Էիր աստեղծող արարծոյ որ շրջէիր ի վերայ ջրոց. Նոյն և ի ջուրսն աւազանին ի շնորհել մեզ քում էակցին. զգուեա որով աղաւնակերպ զմարդիկ ծնանիս աստուածակերպ. Արբո: Բարուն վերնոցն իմանալեաց և ըստորին այսոր զգալեաց. որ մարգարէս տաս ի հոգւոյդ և առաքեալս ի ձեռնորդաց. ամենատուր ըզմաքսաւորս քարոզ բանին քում զհալածողս. Արբո:

Հն. Ի ձայն փողոյ գալըստեան քո Տէր ամենայն հողիք զարթիցեն. կալ ի դատաստանի քում Քրիստոս Աստուած մեր: Յորժամ հնչէ բարբառն ահագին և հարկանի փող յարութեան մերոյ. և մեք գոչելով ասեմք փառք գալըստեան քո Տէր: Յորժամ առնես հատուցումըն Տէր և սուրբքդ քո պարծեսցին ի քեզ. և մեզ շնորհեսցես Փրկիչ կալ ի յաջմէ քումմէ:

Մտ. Զքեզ Հայր յառաջ քան զյաւիտեանս բարեբանեն դասք անմարմնոց հրեշտակաց. ձայնիւ երգով գոչեն և աղաղակեն. || Աստուած աստուածոց և Տէր տերանց Փրկիչ գոլով: Առաքեցեր զքո Միածինըդ մարմնանալ ի սուրբ կուսէն. և անարատ ծընանիլ յորովայնէ անապականն. բառնալով ըզմեր նեղութիւնս. Աստ:

— Փառք Հօր: Շնորհք բարի յԵրուսաղէմ երեւեցաւ հեթանոսաց. զի արարիչն յաւիտենից տըղայ եղեալ յորդեգրութիւն կենաց կոչէ. Աստուած:

— Այժմ և միշտ: Սովաւ ըզկեանըս մեր խաղաղացո միայն բարեգութ. և փրկեա յամենայն փորձութենէ:

Ալէլուիա խաչի է յոյնեն:

---

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԴՁ

Այսօր զենար զառն Աստուծոյ. վասըն յանցանաց նախաստեղծին ի վերայ խաչին պատարագեալ հեղեր զարիւնդ ի փրկութիւն. || Օրհնեալ Տէր Աստուած հարցըն մերոց: Այսօր ընդ գիտութեան փայտին մահու. որով նախահայրըն մահացաւ. ըզփրկականըդ քո նըշան փոխանակեալ կենաց փայտ մեզ շնորհեցեր. Օրհնեալ: Այսօր ըզճանապարհ ծառոյն կենաց. զոր եւ քրովբէից պարունակեալ պա-

հէքին ըզգուշութեամբ ամփոփ ըղբօսցեղէն սուրբն բարձեալ բարձեր որդւոց Ադամայ. օրհնեալ Տէր Աստուած հարցն մերոց:

Գ. Ըզտէր օրհնեցէք ի բարձր արարէք ըզնա յաւիտեանս: Որ բեւեռեցաւ ի խաչին Քրիստոս. ելոյծ ըզկապեալսն և զթշնամին անլոյծ կապեաց կենարար խաչիւն իւրով. բարձր: Որ փոխանակ պըտղոյ մահաբեր ծառոյն. կենաց պըտուղն որ ի վերայ քառաթեւեան կերակրեաց զազգս որդւոց մարդկան. բարձր: Որ ըզգիր պարտեաց կողին ծնելն լըւաց. հրաշքն վըտակաքն ի տիգախոց կողէն բըղխեալ զոր արբոյց տիեզերաց. բարձր:

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԴԶ

Մայր լուսոյ Մարիամ սուրբ կոյս. որ գլոյան : 655:

ՈՂՈՐՄԵԱ ԳԴ

Ով քաղցրութեւ լուսածին գերամպանծ նիշ կամաւորեց կենացն ամենից. մինչ տաղկատարած առ քեզ են: Քաղցրակուսի ազանց հաւանի և պահապան ի յեր և ի մուտս. փրկութիւն ի յայսոց եւ պարգեւ անմահութեան: Դրոշմ ըզգայութեան եւ կնիք ի դէմ ամենից. դու եւ յաստուածային նաւըն կամարիս խորհրդոց. յորմէ արեգակնային փայլեան ճառագայթք:

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԳԴ

Ով պահապան որ ծագեցար յեդեմայ. նըշան յաղթութեան ընդդէմ աներեւոյթ թըշնամեաց: Դու փակեալ դրախտին բացող և առաջնորդ աւազակին. որ զբոցեղէն սուրբն կապտեաց ա նեղին հրամանաւ: Քեւ ցընծան ըստորայինքս ամենայն. ի միւանգամ քո գալըստեանն. եւ յաւէժ ը զուարճանան զաւաք ամպարշտացն առէին:

Առաւօտու Երգ խաչ. Ետուր երկիւ ։ Որպէս փրկեցան ։
Քարոզ Ասասցուք ։
ՄԱՆԿՈՒՆՔ խաչ է յոյնէն ։
Ջնջէ Քար. Սուրբ խաչիւս ։ Կեցո. Յոյնի ։ Աղ. Պահպան ։

---

### ՑԵՐԵԿՈՑԻՆ

ՄԵՍԵԴԻ խաչ. Ետուր երկիւ ։ Որպէս փրկեցան ։
ՀԱՄԲԱՐՁԻ ԳՁ. Որ ծագեցեր ։ Հինգ տան ։ Ի վայր ։
Քար. Սուրբ խաչիւս ։ Կեցո. Յոյնի ։ Աղ. Պահպանեա ։

---

# ՇԱԲԱԹ

## Տօն խաչի

### Ի ԳԻՇԵՐԻ

ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԳՁ

Որ ծագեցեր մեզ լոյս մեծ ըզնըշան յաղթութեան խաչի քո թագաւոր յաւիտենից. եւ ետուր պարիսպ ամրութեան հաւատացելոց քոց. աշտարակ հըզօր յերեսաց թըշնամւոյն. Աղաչեմք ըզքեզ Տէր. պահպանեա ըզմեզ ընդ հովանեաւ խաչի քո սուրբ ։ Առ պըսակ զարդարեալ ի շնորհաց իմանալի լուսոյն. եւ եդեալ ի գլուխ մեղուցելոյն. վայելուչ երանգօք ներկեալ արեամբ եւ ջրով. ի տէգախոց կողէդ զոր ի զինուորէն ընկալար. աղաչեմք ։ Որ զանդունդըս մեղաց ծովուն. սովաւ բաժանեցեր. եւ ըզբըռնաւորըն ծածկեցեր խորքըն յաւիտենական հրով. հաներ ըզժողովուրդըն քո ի բնակութիւնս երկնից անկեալ զօրացն. աղաչեմք ։ Ձողաբարձ նըպատակ օրինակեալ քառաթեւ սուրբ խաչին. ձեւացուցանէր Մովսէս իսրայէլեան բանակին զօձըն պըղընձի. ապրեցուցանել զվիրաւորեալսն ի խածանող սողնոց թունից. աղաչեմք ։

Digitized by Google

Փայտ կենաց որ փոխանակ մահացան դրախտին. ընդ Քրիստոսի դրախտաբերեցեր. Պայծառացեալ պանծեա զուխտս հաւատացելոց: Քեւ բացաւ մեզ ճանապարհ ծառոյն կենաց. Որ սրովբէափակ պահպանութեամբ էին. պայծառացեալ: Քեւ ազատեցաւ նախահայրն ի ճաշակմանէ դրախտին. եւ քեզ երկրպագեն ամենայն հաւատացեալք. պայծառացեալ:

Անուանեալ փայտ գիտութեան ընդմէջ ի կենացն հանեալ արտաքսեցոյց. որով յանցեաւ մայրն Եւա եւ պատրեաց ըզնախահայրն: Իսկ փայտ խաչի քո կենսատու. զաւազան զօրութեան կենաց մարդկան եւ յոյս հաստատութեան. առաջնորդ եղեւ մեզ ի կեանսն յաւիտենից: Ետուր մեզ նշան յաղթող սուրբ զխաչ քո. զի առեալ մտցուք ընդ նեղ դուռն անձկացեալ ճանապարհին. որով ցանկային երկրածին որդիք մարդկան:

ՅԱՐ. Էակից հօր. կամաւորութեամբ եկիր ի չարչարանս. զչարչարանս յանձն առեր. խաչի համբերելով իջեր ի գերեզման: Իւղաբերիցն եկեալ ի գերեզման փրկչին. զի զիւղս անոյշս բերին. ի խնկել զանմահական մարմինն: Աւետիս լուեալ ի հրեշտակէն որ ասէր. Տէր յարեաւ ի մեռելոց. ձեզ կեանս պարգեւեաց:

Յամենայնի բազումողորմ Աստուած. նայեաց յիս գթութեամբ եւ խնայեա զի դու միայն ես մարդասէր: Եւ խաչիւդ քո կենարարաւ պահեա. եւ յարութեամբդ քո փրկեա եւ ապրեցո զիս: Եւ ի միւսանգամ ի գալստեանն քո Տէր. վերստին զիս նորոգեա եւ ապրեցո զիս:

Քրիստոս Աստուած որ տարածեցեր ըզձեռս քո ի

Digitized by Google

խաչին. եւ լուծեր ըզկնիք դատապարտութեան մերոյ. ողորմեա։ Ի խաչին բեւեռեցար. եւ հեղմամբ ա-րեանըդ քո փըրկեցեր ըզտիեզերս ի մեղաց. ողոր-մեա։ Թաղեցար ի մէջ երկրի. եւ յերրորդ աւուր յարեար ըզդըժոխս աւերեցեր բանիւ. ողորմեա։

Ի խաչանիշ փայտէն դըղըրդեցան դըժոխք. զօրու-թեամբ սուրբ Հոգւոյն նորոգեցաւ երկիր. ո՞վ է սա ‖ որ խափանեաց ըզմահ։ Հրեշտակն աւետէր կուսին Մարիամու. սա է ի սկըզբանէ Բանն որ յառաջ քան զյաւիտեանս Որդին. սա է Թագաւորն որ։ Յարեաւ ծւ յաւուր երրորդի վէմըք պատառեցան երկիր շարժե-ցաւ սասանեցան դըժոխք. սա է կենդանին յաւիտե-նից Քրիստոս։

Հգ. Արեգակն արդարութեան Քրիստոս ծագեալ յաշ-խարհս հալածեաց ըզխաւարն անգիտութեան. եւ յետ մահու եւ յարութեան համբարձաւ առ Հայր յոր-մէ ծագեաց. որ երկըրպագի յերկնաւորաց եւ յերկրա-ւորաց ընդ Հօր եւ սուրբ Հոգւոյն. ‖ վասն որոյ և մեք երկրպագանեմք Հօր Հոգւով եւ ճըշմար-տութեամբ։ Որ փոխանակ ծոցածին Բանին որ ել յերկինս. առաքեցաւ աւետիքըն Հօր ի բարձանց Հո-գւոյն ճըշմարտութեան. մըխիթարել զորս յԱդամայ տըրտ-մեցելոց եւ հրաւիրել զընտրեալ դասս առաքելոցն. վասն։ Այսօր տըրտմական և գիշերային լուծան եր-կունք ծընընդեան նախամօրն. քանզի զծնեալսըն մար-մնով ի մահ եւ յապականութիւն. վերըստին ծնանի Հոգին յորդիս լուսոյ Հօրն երկնաւորի. վասն։

Հն. Արարչագործ Աստուած. որ յոչընչէ գոյացու-ցեր զերկինս եւ զերկիր. օրհնեմք ըզքեզ. որ հանգուցիչդ ես նընջեցելոց Հայր ամենակալ։ Բանդ

Digitized by Google

Աստուած և համագոյ փառաց Հօր պատուակից. զովեմք ըզքեզ որ յարութեանդ ես ննջեցելոց Որդիդ միածին: Աղբիւր անսպառ յորդէ բաշխես տնտեսականն շնորհք. բարեբանեմք ըզքեզ. որ նորոգող ես ննջեցելոց Հոգիդ ճշմարիտ:

ՄԾ. Զանճառելի լուսոյ մայր. և ընդունակարան անսկզբնակից Որդւոյն. ‖ օրհնութեամբ մեծացուցանեմք: Զանհաս տնօրէնութեան մայր. և զանձնաւոր տաճար Աստուծոյ Բանին. օրհնութեամբ:
— փառք Հօր: Զբոլորից փրկութեան մայր. որ զանտանելին յէից ի յարգանդի եբարձ. ընդ նմին ամենեքեան օրհնութեամբ:

— Այժմ և միշտ: Զկենդանագիր անապական ծնընդին քո. երկանեմք առաջի անձախական տէրութեաննդ քո. յորժամ գաս փառօք Հօր դատել ըզթըշնամին խաչին քոյ. ներեա յանցանաց մերոց բարեխօսութեամբ մօր քո և կուսի. աղաչեմք ըզքեզ Տէր. պահպանեա ըզմեզ ընդ հովանեաւ խաչի քո սուրբ:
Ալէլուիա խաչի է յայնէն:

## ՅԱՌԱՒՕՏՈՒ
### ՀԱՐՑ ԴԿ

Քրիստոս Աստուած որ առաւել քան զարեգակն. ըզնըշան քո յաղթող հրաման ցուցեր զերիվերայ սուրբոյն Գողգոթայ. ‖ վասն որոյ ըզքեզ բարեբանեմք Աստուած հարցըն մերոց: Քանզի պայծառ և սուրբ փրկական խաչ քո Տէր. զարդարեալ ի լուսոյ յերկընից ցոլացեալ երեւէր յերուսաղէմ. վասն: Եւ քացաճաճանչ փայլմամբ արեգակնային ցըն յաղթէր ծառագայթից. և իծ յայտնէն. բընակեալք և եկեղեցի հետևեալք ի քաւարանն ի մաղթանս. վասն:

Գ. ԸզՏէր օրհնեցէք ‖ Եւ բարձր արարէք ըզնա յաւիտեանս ։ Ո՛ր զահաւոր խորհրդով միասնագամ զալըստեանն իւրոյ Քրիստոս տըպաւորեաց այսօր փայլմամբ սուրբ խաչին որով երկիրս պանծացաւ. Եւ ։ Ո՛ր ահաւոր ձեւով ցուցաւ ցընծացաւ Նըրուսաղէմ. Եւ զարհուրեալ դողային զաւրք սանդարամետիցն. Եւ ։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԴԿ

Աստուածածին պայծառ քան զերկինս. որ ի ։ 277 ։

ՈՂՈՐՄԵԱ ԴԿ

Այսօր նըշան յաղթող երեւեալ ի յերկրի. պայծառացոյց ըզտիեզերս. զէն յաղթութեան ետուր ըզխաչ քո Տէր. ‖ Ապրեցուցանել ըզմեզ ի պատրանաց թըշնամւոյն ։ Փայտ կենաց կանգնեալ ի մէջ տիեզերաց. յոյս եւ ապաւէն ազգի մարդկան. սովաւ պահեսցէ ըզմեզ յամենայն վըտանգից մերոց. ապրեցուցանել ։ Յաղթող զօրութեամբ խաչի քո պահեա ըզմեզ Քրիստոս Աստուած. որ տարածեցեր ըզձեռս քո ի նմա. եւ լուծեր ըզկնիք դատապարտութեան յանցանաց մերոց. ապրեցուցանել ։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԴԿ

Խաչի քո Քրիստոս երկըրպագեմք ամենայն. որ ի փըրկութիւն մեզ կանգնեցաւ. սովաւ եղիցի մեզ պահապան յաղթող ‖ Ապրեցուցանել ըզմեզ ի պատրանաց թըշնամւոյն ։ Ի սմա բարձրացար բարձրեալդ անիծից. որ փառաւորեալդ ես ընդ Հօր. ժողովել ըզհեռացեալսն կենսաբեր փայտիւն. ապրեցուցանել ։ Սովաւ լուսաւորեցան արարածք ամենայն. սովաւ սպասէին արգելեալքն ի մեղսասէր բանտին որ ազատեաց ըզմեզ ի պատրանաց թըշնամւոյն ։

Աւետարան Եւթն խաչ. Ետուր երկիւ ։ Որպէս փրկեցան ։
Քարոզ Ասասցուք ։

կամ շարականէն տաղ. Դկ. Պարունակեալ պահէ: 1034:
Զնոյն քարոզ Սուրբ խաչիւս: Կեցո. Յոյնէ: Աղ. Պահպան:

---

# Բ. ԿԻՒՐԱԿԷ

## ՁԿՆԻ ԽԱՁԻ



### ՅԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԴՁ

Որ եկիր կամաւ Հօր ի խաչ ելար: Իւր տէրէն. 681:

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԴՁ

Անթոռ քերովբէական երևեալ այսօր Սիմէոնի. զԱնտուածորդին ի գիրկս իւր բարձեալ մարմնով. || զոր զօրք երկնից բարձունքս հանապազ մեծացուցանեն: Հոգւովն զոր չէր ցնծայր ալեօքն ծերունին ամենալով. սա է Թագաւորն անմահ. զոր: Արտասուելով աղերսէր. արձակեա զիս ի խաղաղութիւն անարատ ծնողին քո բարեխօսութեամբ. զոր:

---

Այս շաբաթս տօնք են Վարդանանց որբոյ Խոշէ, որ տօնէ տօնք որբոյն Գէորգեայ: Բայց տօնէ լինին:

---

# Բ. ԵՐԿՈՒՇԱԲԱԹԻ

Ս. Մամասայ եւ Փիլիկտիմոնի եւ Սիմէոնի Միւնակեցին

ՅԱՌԱՒՕՏՈՒ ՀԱՐՑ ԲՁ. Աննախակալ և բարե: 85:

---

# Բ. ԵՐԵՔՇԱԲԱԹԻ

Ս. Կուսանացն Փեբրոնեայ եւ Մարիանեայ

ՅԱՌԱՒՕՏՈՒ ՀԱՐՑ ԲՁ. Ընդ սուրբս քո բարեբ: 86:
ՄԱՆԿՈՒՆՔ ԵՒ ՀԱՄԲ. Դկ. Յիշատակ Քրիս: 829:

---

# Բ. ՉՈՐԵՔՇԱԲԱԹԻ

Պահոց

ՅԱՌԱՒՕՏՈՒ ՀԱՐՑ ԳՁ. Հարցն մերոց Աստ: 243:

Digitized by Google

# Բ. ՀԻՆԳՇԱԲԱԹԻ

## Ս. Հայրապետացն Անթիմոսի եւ Նրանոսի

ՑԱՒԱԽՕՏՈՒ ՀԱՐՑ ԴՁ. Որք հաղորդեցան չար: 99:

*ՄԱՆԿՈՒՆՔ ԳՁ. Հանդիսացեալ ընդ երկնայ:* 939:

ՑԵՐԵԿՈՑԻ Համբարձի Մարտիրոսաց է յոյնէն: 105:

---

# Բ. ՈՒՐԲԱԹ

## Պահոց

---

# Բ. ՇԱԲԱԹ

## Ս. Գէորգայ զօրավարին եւ Ադւոկտոսի եւ Ռոմանոսի երգեցողին

ՑԱՒԱԽՕՏՈՒ ՀԱՐՑ ԳԿ. Զինուորութիւնք Հրեշ: 95:

*ՄԱՆԿՈՒՆՔ ԴՁ*

*Ով սուրբ Գէորգ պարծանք ազգի մարդկան. Հրաշալի ճգնութեամբ ի յերկրի նահատակեալ եւ ի յերկինս պսակեալ ընդ անմարմնոցն դասս: Քանզի դու վառեցար զինու սուրբ Հոգւոյն. եւ յաղթեցեր արիաբար անմարմին բելիարայ: Մի դադարեր բարեխօսել վասն մեր. առ Հայր եւ Որդի եւ սուրբ Հոգին. զի յաղթեսցուք հաւատով անմարմին բելիարայ:*

---

ՑԵՐԵԿՈՑԻ Մեծացի խաչ. Եմտուր եր: Որպէս փրկեցան: ՀԱՄԲԱՐՁԻ ԱԿ. Նշանաւ ամե: Վէջ տան: Ի ճաշ: Ջնջի քող. Սուրբ խաչիւ: Կեցո. յոյնէ: Աղ. Պահպան:

---

# Գ. ԿԻՐԱԿԷ

# ՏՕՆ ՎԱՐԱԳԱՅ ԽԱՉԻ

## Ի ԳԻՇԵՐԻ

*ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԱԿ*

*Նշանաւ ամենայաղթ խաչիւդ քո Քրիստոս. պահ-*

Digitized by Google

պահեա զմեզ մարգարէր յաներեւոյթ թըշնամւոյն || զի դու միայն ես. Թագաւոր փառաց օրհնեալ յաւիտ-եանս: Որ ի վերայ սորա տարածեցեր զանարատ բազուկըս քո. եւ հեղեր զարիւնդ ի փրկութիւն տիե-զերաց զի: Ի միւսանգամ քո գալըստեանն յերեւել սուրբ նըշանիս. արժանի արա ըղձատուաս քո վերըս-տին նորոգման զի:

† Խաչ քո եղիցի մեզ ապաւէն բոցանիշ փայլ-մամբն իւրով. խորտակեաց ըզթըշնամին եւ եղոյծ ըզ-բաստակնիք. անուանեալ փայտըն կենաց ի փրկութիւն տիեզերաց: Վերանորոգեալ ցընծան երկինք եւ երկիր ըս-ուրախանայ. ընդ յայտնել սուրբ խաչին անուակնաձեւ քառաթեւին. որ զաշխարհըս լուսաւորեաց արեգա-կնակերպ ճառագայթիւք:

Սեղան քո Տէր զօրութեանց. հաւատով կան-գնեցաւ ի խորանի քում || եկայք ժողովուրդք երկըր-պագեսցուք: Վէմ պատուական. ի խորանի քում հիմ-նեցաւ այսօր. եկայք: Ի սմա մատուցաւ. ճըշմարիտ պատարագ եւ զենումն անապական եկայք:

ՑԱՐ. Իջեր յերկնից Որդի Աստուծոյ. եւ մարմնացար ի սրբոյ Կուսէն. որ անմեկնելիդ ես ի Հօրէ ողոր-մեա: Եկիր ի չարչարանըս կամաւորապէս Աստուած. եւ խաչեցար վասն ազգի մարդկան. եւ ի գերեզման իջեր անապական ողորմեա: Զմահ լուծեր եւ զդըժ-խարհս ազատեցեր կարողապէս Տէր. եւ ի մեռելոց յարեար իշխանութեամբ ողորմեա:

Որ խոնարհեցար յերկնից ի հայրական ծոցոյ. միա-ծին Որդի Աստուծոյ եւ առեր մարմին ի սրբոյ կու-սէն վասն մերոյ փրկութեան ողորմեա: Ընդ մեզ Աստուած չըբեւեցար ընդ մեղաւորաց. եւ կոխեցեր

կրեցան հաւատացեալք. Նորահրաշ զարդարեցան քահանայք տեսին զյաղթող նշանն. արարածք ամենայն ի լուսոյն պայծառացան:

Ալէլուիա խաչէ է յայնէն:

---

ՑԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԴՁ

Որ ընդլոյս անճառելի աստուածութեանդ քո Քրիստոս. ի վերայ խաչին ծագեցեր այսօր ի լեառնէ Վարագայ. || օրհնեալ Տէր Աստուած հարցն մերոց: Որ զահաւոր և զմիւսանգամ քո գալստեան նշան երեւման. ծանուցեր այսօր նշանաւ խաչի քո ճառագայթելով յերկրի. օրհնեալ: Որ ետուր նշան երկիւղածաց և զէն ընդդէմ թշնամեաց. պահպանեա սովաւ զհաւատացեալս անուանելոց քում սրբոյ. օրհնեալ:

Գ. ԸզՏէր օրհնեցէք բարձր արարէք ըզնա յաւիտեան: Որ զարդարեացն այսօր ըզնշան խաչին. երկնային լուսով պայծառ քան զարեգակն ըզՏէր: Որ յայտնեացն այսօր ըզփրկական նշանն. հրեշտակաց իջմամբ ի լեառն Վարագայ. ըզՏէր: Եկայք փրկեալքս կենարար խաչիւն. Քրիստոսի փրկչին մերոյ ի սմա երկրպագելով ըզՏէր:

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԴՁ

Մայր լուսոյ Մարիամ սուրբ կոյս. որ զլոյսն: 655

ՈՂՈՐՄԵԱ ԳՁ

Քեզ Քրիստոսի կաթուղիկէ եկեղեցւոյ շնորհեալ զյաղթական ըզպատուական զաստուածընկալ սուրբ նշանս. մատուցանեմք զօրհներգութիւն մինչև ի բարձունս: Սա կամաւ քո Քրիստոս եւ թեւօք ամենազօր սուրբ Հոգւոյն. եւ դասուք հրեշտակաց թռուցեալ է.

կամաւորի ․ ի լեառըն վարագայ բընակել ի նմա ։ Ընկալք ժողովուրդք ․ երկրպագեսցուք աստուածային սուրբ նըշանիս ․ համբարձէք միաբան ըզձեռըս ձեր ի սըրբութիւն ․ եւ ըզբընակեալըն ի սմա միշտ փառաւորեսցուք ։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԳՁ

Հրաշափառ տեսութիւն ի կաթուղիկէ եկեղեցւոյ տեսանի ․ գործարան մահու մահուամբ առիթ գոլ կենաց ․ եւ մահացուցիչ նախաստեղծին մահուամբ գոլ շնորհող յարութեան ։ Պարգեւ գերագոյն պարգեւի այսօր հաւատացելոց ․ եւ մահացոյց ի կենաց առնու իւր զօրըս վերելեանկս ․ եւ թռուցեալ վերագոյն բընակել ի տեղւոջըն սըրբութեան ։ Ընկալք ժողովուրդք ընդ հոգեղինացըն սպասաւորեսցուք ․ երկրպագեսցուք աստուածային սուրբ նըշանիս ․ փառաւորեսցուք ըզհրաշագործ պարգեւաց տըւողն ։

Առաւօտու Եւթ խաչ ․ Ետուր երկիւ ։ Որպէս փրկեցան ։ Քարոզ Ասասցուք ։

Զինչ Սուրբ Աստուածչն Մաղ ․ Փրկել ։ Քար ․ Վ,ասն լըսելի ։ Քահ ․ Օրհնութիւն ։ Ե— ա—

ՍԱՂՄՈՍ Դ ․ Է ՆԷ

48 ․ Նշանեցաւ առ ։ փխ ․ Ի կարդալ իմում ։ 325 ։

Ալէլուիա ․ ալէլուիա ։

ԸՆԹերցուած յԱռակաց ։ Գ ․ 18 ։

Փայտ կենաց է ամենեցուն որ պատսպարին ի նա, և որ յենուն ի նա իբրև ի Տէր հաստատութեամբ ։ Աստուած իմաստութեամբ հիմունս արկ երկրի , պատրաստեաց զերկինս խորհրդով ․ հանճարով իւրով զանդունդս պատառեաց , և ամպք հոսեցին զանձրև ։ Որդեակ մի լուծանիցիս ․ պահեա զխորհուրդս իմ և զիմաստութիւն, զի կեցցէ անձն քո, և շնորհք իցեն ի վերայ պարանոցի քո ․ եղիցի բժշկութիւն մարմնոյ քում, և դարման ոսկերաց քոց ։ Զի գնասցես յուսով խաղաղութեան յամենայն ճանապարհս քո, և ոտն քո մի գայթագղեսցի ։ Զի եթէ

նստիցես՝ աներկիւղ իցես, և եթէ ննջեսցես՝ քաղցր քունեսցես, և ոչ երկիցես ի զարհուրանաց ի վերայ հասելոց և յարշաւանաց ամպարշտաց ի վերայ եկելոց։ Զի Տէր եղիցի ի վերայ ամենայն ճանապարհաց քոց, և հաստատեսցէ զոտն քո՝ զի մի՛ գայթագղեսցի։ 26։

Ընթերցուած յեսայեայ մարգարէէ: Կե . 22:

Ըստ աւուրց փայտին կենաց եղիցին աւուրք ժողովրդեան իմոյ, գործք ձեռաց նոցա հնասցին։ Եւ ընտրեալք իմ մի՛ ևս վաստակեսցեն ընդունայն, և ոչ ևս ծնանիցին որդիս յանէծս, զի զաւակ օրհնեալ են յԱստուծոյ՝ և ծնունդք նոցա ընդ նոսա։ Եւ եղիցի՝ մինչ չև կարդացեալ իցէ նոցա՝ ես լուայց նոցա, և մինչդեռ խօսիցին, ասացից՝ թէ զի՞նչ խնդրէք։ Յայնժամ գայլք և գառինք ի միասին ճարակեսցին, և առիւծ իբրև զեզն յարդ կերիցէ, և օձ զհող իբրև զհաց կերիցէ. մի մեղիցեն և մի՛ վնասեսցեն ի լերին սրբութեան իմոյ, ասէ Տէր։ 25։

Պօղոսի առաքելոյն ի Գաղատացւոց թղթոյն է ընթերցուածս: Զ . 14:

Այլ ինձ քաւ լիցի պարծել՝ բայց միայն ի խաչն։ 474։

Ձայնն Ալէլուիա . ալէլուիա . ալէլուիա .

Նշանեցաւ առ մեզ լոյս երեսաց քոց և ետուր ուրախութիւն սրտից մերոց։

Ալէլուիա, Օրթի

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի։ ԻԴ. 30։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս ասէ .

Եւ ապա երևեսցի նշան որդւոյ մարդոյ յերկինս, և յայնժամ կոծեսցին ամենայն ազգք երկրի, և տեսցեն զորդի մարդոյ եկեալ ի վերայ ամպոց երկնից զօրութեամբ և փառօք բազմօք։ Եւ առաքեսցէ զհրեշտակս իւր փողով մեծաւ, և ժողովեսցեն զընտրեալս նորա ի չորից հողմոց՝ ի ծագաց երկնից մինչև ի ծագս նոցա։ Ի թզենւոյ անտի ուսարուք զառակն. զի յորժամ նորա ոստքն կակղասցին և տերևն ցցուիցի, գիտէք թէ մերձ է ամառն։ Նոյնպէս և դուք՝ յորժամ տեսանիցէք զայս ամենայն, գիտասջիք թէ մերձ է ի դուրս։ Ամէն ասեմ ձեզ՝

եթէ ոչ անցցէ ազգս այս՝ մինչև այս ամենայն եղիցի: Երկինք և երկիր անցցեն, և բանք իմ մի՛ անցցեն: 35:

Երգ. Նորաստ: Քար. Խնդր: Կեցո. Յայնժ: Աղ. Քում ամ:

---

ՑԵՐԵԿՈՑԻ Մեսեդի Խաչի. Ետուր եր: Որպէս փրկե: ՀԱՄԲԱՐՁԻ ԳԶ. Հրաշափառ տեսութիւն ի: 1041: Քար. Սուրբ խաչիւս: Կեցո. Յայնժ: Աղ. Պահպանեա:

---

# Գ. ԵՐԿՈՒՇԱԲԱԹԻ

## Ս. Դաւթի Դւինեցւոյն եւ սրբոց վկայիցն Եւղամ-բէոսի եւ Եւղամբէուհւոյն

ՑԱՌԱՒՕՏՈՒ ՀԱՐՑ ԲԿ. Օրհնեմք զքեզ Տէր: 88:

ՄԱՆԿՈՒՆՔ ԵՒ ՀԱՄԲԱՐՁԻ ԲԿ

Լըցեալ աստուածային շնորհիւ երանելի սուրբ ճըգնաւոր տէրըն Դաւիթ. եւ անուն քաղցրութեան քո եւ յերկինս. յուրախութիւն հրեշտակաց և ընդ աշխարհս ամենայն ցընծութիւն մարդկան: Ստացար քեզ անուն քաղցրութեան յասպարիզի ճըգնութեան ով տէրըն Դաւիթ. յաղթեցեր թըշնամւոյն խաչիւըն Քրիստոսի. լըցուցեր ուրախութեամբ ըզտիեզերս ամենայն. եւ աղօթիւք առ Աստուած եղեր մեզ զօրավիգն: Ետուր ըզմարմինդ ընդ հոգւոյ քում փըրկանս. եւ խաչիւ և արեամբ գնեցեր զարքայութիւնն. առեր իշխանութիւն բարեխօսութեան. աղաչեա զԱստուած զի փըրկեսցէ ըզմեզ ի հարաւային կործանմանէ:

---

# Գ. ԵՐԵՔՇԱԲԱԹԻ

## Ս. Եւստաթէոսի եւ կնոջ նորա Թէոպիստեայ եւ երկուց որդւոցն եւ սրբոց կուսանացն Երմոնեայ եւ Նեքտաւինեայ

ՑԱՌԱՒՕՏՈՒ ՀԱՐՑ ԲԿ. Որք ի մարտի անօրի: 89:
ՄԱՆԿՈՒՆՔ ԵՒ ՀԱՄԲ. ԴԿ. Ցիշատակ Քրիստոս: 829:

---

Digitized by Google

# Գ. ՉՈՐԵՔՇԱԲԱԹԻ

## Պահոց

### ՑԱՌԱԻՕՏՈՒ

ՀԱՐՑ ԳՉ

Օրհնեալ ես Տէր Աստուած հարցն մերոց։ Որ հրաշալի ձայնիւ վերնոյն դասք զքեզ փառաւորեն. օրհնեալ։ Ազգք որ ի ձայնիւն երգեմք քեզ թագաւոր փառաց. օրհնեալ։

Գ. Ըզտէր օրհնեսցէք բարձր արարէք ընդ յաւիտեան ի քերովբէս։ Նշէք Զլոյսն անքննին ի հայրական ծոցոյ առաքեալ օրհնեցէք։ Նսցէ Որ զազգ որդւոց մարդկան ի յիսրայէլ անուն նորոգեալ օրհնեցէք բարձր։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԳՉ

Լոյս լուսոյ մայր և կենարար բանին բնակարար։ 469։

ՈՂՈՐՄԵԱ ԳՉ

Վիրաւորեալ յանցանօք անձն իմ առ քեզ Տէր հառաչ բարձի զայս իմ. թող ինձ ըզմեղս իմ. մեծային բարեգութ և ողորմեա ինձ Աստուած ըստ մեծի ողորմութեան քում։ Կործանեաց զիս չարագործ թշնամին. և կամի խաղալ զիս որսալ. հայր բարեգութ բժշկեա զվիրաւորեալս և ողորմեա։ Անդունդք մեղաց պաշարեցին զիս. զի բազում են քան զաւազ ծովու առ քեզ Տէր պաղատիմ. փրկեա ի վտանգէս և ողորմեա։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԳՉ

Փառք: Բ... ...ոք Թագաւորին յաւիտենից։ Որ յանմատոյց լուսոյ ծագեալ Բանդ փառակից զՀօր. քեզ հրեշտակք երգեն անլռելի. փառք։ Քահանայք և պաշտօնեայք սուրբ եկեղեցւոյ անդադար. քեզ ընդ հրեշտակս երգեն անլռելի փառք։

---

Digitized by Google

կեղեցի . եւ պըսակեաց սուրբ խաչին նըման ըղ-փանս երգեցուք ։ —Փառք Հօր ։ Այսօր եւ մեք տօ-նեմացուք զնաւակատիս սուրբ խաչին . եւ փըրկողին մատուցուք փառք եւ պատիւ յաւիտեան ։

—Այժմ և միշտ ։ Յանձն առեր զչարչարանս վա-սըն նոյեան տապանին ի հրեշտակէն ընկալեալ զփայտ փըրկութեան աշխարհի . ըզքեզ խնդրեմք բարեխօս առ Հայր յերկինս վասըն մեր ։

---

### ՅԱՌԱՒՕՏՈՒ
#### ՀԱՐՑ ԳՁ

Սուրբ ես Տէր և ի սուրբըս հանգուցեալ . բարե-բանեալ ի վերին զօրաց և ի սըրբոց քոց . ‖ Տէր Աստըւած հարցըն մերոց ։ Զարժանահաս մահապար-ժամ ի ցասմանէ քում հրամանի . բարձ ի մէնջ բա-րեխօսութեամբ եւ աղօթիւք սըրբոյն Յակովբայ . Տէր ։ Ի քէն հայցեմըք զօգնութիւն ամենասուրբ Երրորդու-թիւն . օգնեա մեզ ի նեղութեան մերում . բարե-խօսութեամբ և աղօթիւք սըրբոյն Յակովբայ . Տէր ։

Գ. ԸզՏէր օրհնեցէք ‖ Զքրիստոս թագաւորն յիշա-տակի սորա բարձր արարէք յաւիտեան ։ Որ ընտրեաց զերանելի ըզհայրապետն . ի լուսաւորել զմանկունս սուրբ եկեղեցւոյ . զՔրիստոս ։ Որ բազկատարած հայց-մամբ խընդրելով ի Տեառնէ զողորմութիւն . եւ աղ-բիւր բըժըշկութեան բըղխեալ ի Հայաստան աշ-խարհի . զՔրիստոս ։ Որ ի հրանիւթիցըն սպասաւորե-լով զարհուրեցոյց ըզթագաւորն . հովիւըն քաջ բա-նաւոր հօտի . և բըժիշկ ախտացելոց անձանց . զՔրիս-տոս ։

#### ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԳՁ

Սուրբ զԱստուածածինն օրհնութեամբ մեծացու ։ 141 ։

ՈՂՈՐՄԵԱ ԳԶ

Երկըրպագեմք առաջի տեւողական նըշխարաց. ճըգնաւորին Քրիստոսի եւ պատուական վըկային. ‖ Որ է պարծանք աշխարհի եւ բարեխօս վասըն մեր։ Ընդ ճըգնութիւնըս սորա առ քեզ ունիմք բարեխօս. եւ աղաչեմըք սորա հրաշագործեալ յերկրի բըժըշկութիւն հիւանդաց. որ է։ Ցընծութեամբ տօնեցուք ըզյիշատակըս սորա. հաւատացեալ ժողովուրդք ի փառս ամենազօր տէրութեանն. որ է։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԳԶ

Ամուրք հաւատոյ և պարծանըք սուրբ եկեղեցւոյ. եւ հովիւ քաջընթաց երկնաւոր հօտապետին. ‖ յառաքելական յաթոռ նըստար երանելի սուրբ հայրապետ։ Մարգարիտ լուսափայլ եւ լուսաւորիչ տիեզերաց. սիւն լուսոյ սըրբութեան կանգնեալ ի մէջ Հայաստանեայց. յառաքելական։ Հողանիւթ բարունակ եւ բարեխօս առ Տէր վասըն մեր. բարբառնող բանին կենաց եւ պարծանք եկեղեցւոյ. յառաքելական։

ՄԱՆԿՈՒՆՔ ԵՒ ՀԱՄԲԱՐՁԻ ԳԶ

Հայրապետ սուրբ եւ անբիծ և ընտրեալ յորովայնէ. սքանչելագործ վըկայ եւ պարծանք ազգի մարդկան. ‖ առ Քրիստոս բարեխօսեա վասըն մեր քո տօնողացս։ Հովիւ հոգեւոր բանաւոր հօտի. լուսաւորիչ տիեզերաց սիւն լուսոյ կանգնեալ ի մէջ եկեղեցւոյ. առ։ Հաստատութիւն հաւատոյ պըսակ ի գլուխ եկեղեցւոյ. պայծառ քարոզ տիեզերաց և պարծանք ազգի մարդկան. առ։ Ի տաճարի քում սըրբութեան երկըրպագեմք քո նըշխարաց. փառաւորեմք զօր յիշատակի կատարման քո հանգըստեան. առ։

---

# Ե. ԿԻՐԱԿԷ

## ՑԻՍՆԱԿԱՑ

⁂

### ՑԱՌԱԻՕՏՈՒ

ՀԱՐՑ ԴՁ

Որ յաւիտենից ես Աստուած և Տէր: Ի—ր առաջօրն: 650:

---

# Ե. ԵՐԿՈՒՇԱԲԱԹԻ

## Ս. Իգնատիոսի աստուածազգեաց հայրապետին

ՑԱՌԱԻՕՏՈՒ ՀԱՐՑ ԴՁ. Որք հաղորդեցան չար: 99:

ՄԱՆԿՈՒՆՔ ԵՒ ՀԱՄԲԱՐՁԻ ԴՁ

Որ հրաւիրեցեր զյառաջագոյն ընտրեալսն ի սկզբանէ աշխարհի. ի հարսանիսն անմահականն կոչելով յուրախութիւն ընդ բազմելոցն յառագաստին զաստուածազգեացն. Աղաչանօք սորա կեցո զմեզ փառաց թագաւոր: Որ յաթոռս քերովբէականս վերանըստեալ հանգչէիր Որդի Աստուծոյ. հաճեցար խոնարհութեամբ բառնալ ի գիրկս յորդւոց Ադամայ. աղաչ: Որ ըզբաժակ անմահութեան սիրոյ քո արբեալ երանելին Իգնատիոս. որպէս ցորեան աստուածային գազանաց մանրեալ ժանեաւք հաց սուրբ գտաւ Աստուծոյ. աղաչ:

---

# Ե. ԵՐԵՔՇԱԲԱԹԻ

## Ս. Թէոպոմպայ եպիսկոպոսին եւ Թէոփնայ վկային եւ չորից զինուորացն Բասոսի, Եւսեբի, Եւտիքի եւ Բասիլիդեայ

ՑԱՌԱԻՕՏՈՒ ՀԱՐՑ ԲՁ. Անոխակալ և բարեգութ: 85:

---

# Ե. ՉՈՐԵՔՇԱԲԱԹԻ

## Պահոց

ՑԱՌԱԻՕՏՈՒ ՀԱՐՑ ԴԿ. Օրհնեալ ես Տէր: 284:

---

Digitized by Google

## Ե· ՀԻՆԳՇԱԲԱԹԻ

Ս· Ադդէի հայրապետին եւ Աբգարու Թագաւորին ի ԳԻՇԵՐԻ *ՕՐՀ. ԱԿ.* *Որ գերկնաւոր թագաւոր*: 855:
ՑԱՌԱՒՕՏՈՒ *ՀԱՐՑ ԳԶ.* *Որ զանչափ քո զբարե*: 92:
*ՄԱՆԿՈՒՆՔ ՆԻ ՀԱՄԲ. ԲԿ.* *Ով երանելիդ ամե*: 860:

## Ե· ՈՒՐԲԱԹ

Պահոց

## Ե· ՇԱԲԱԹ

Ս· Ինդոսի եւ Դոմնայի կուսին եւ Գղերիկոսի քահանային եւ երկուց բիւրուցն
ՑԱՌԱՒՕՏՈՒ *ՀԱՐՑ ԲԶ.* *Ընդ սուրբս քո բարեբա*: 86:
*ՄԱՆԿՈՒՆՔ ՆԻ ՀԱՄԲԱՐՁԻ ԴԿ*
*Այսօր ընդ անմարմնոցն դասակցեալ պարէ*: 1057:

## Զ· ԿԻՒՐԱԿԷ

ՑԻՍՆԱԿԱՑ



ՑԱՌԱՒՕՏՈՒ

*ՀԱՐՑ ԳԶ*

*Կամաւորութեամբ եկիր ի չարչարս*: *Իւր տօնին*: 661:

## Զ· ԵՐԿՈՒՇԱԲԱԹԻ

Ս· Աբրահամու եւ Խորենայ եւ անարծաթ բժըշկացն Կոզմայի եւ Դամիանոսի
ՑԱՌԱՒՕՏՈՒ *ՀԱՐՑ ԲԿ.* *Օրհնեմք զքեզ Տէր ան*: 88:

## Զ· ԵՐԵՔՇԱԲԱԹԻ

Ս· Աստուածատրոյ վկային
ՑԱՌԱՒՕՏՈՒ *ՀԱՐՑ ԲԿ.* *Որք ի մարտի անօրի*: 89:

Digitized by Google

# ՃՐԱԳԱԼՈՅՑ ԾՆՆԴԵԱՆ

## ՏԵԱՌՆ ՄԵՐՈՅ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ



### Ի ԳԻՇԵՐԻ

Զկէսն սաղմոսին և զան մոնղջին է յեսա և յաւրէան երանին և ամ

### ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԲՋ

Ուրախացիր Սրբուհի Գաբրիէլի աւետեօքն. որ քարոզեացն ըզգալուստ արքային Տեառն ի յերկնից: Ողջոյն ընդ քեզ Մարիամ ի քեզ սուրբ Հոգին եկեաց. և զօրութիւն Բարձրելոյն է վերայ քո հովանացի: Որ ծնանելոցն է ի քէն իւրայնմ առաջնորդ. և ընդհանուր քարոզէ Աստուած հզօր անուամբ Բանն:

† Ուրախ լեր բերկրեալ ամենասուրբ կոյս. որ ծնար աշխարհի զարդարութեան արեգակն. որ լուսաւորեաց զազգս որդւոց մարդկան: Ուրախ լեր բերկրեալ դուռն կենաց. որ ծնար աշխարհի զԹագաւորն Քրիստոս. որ նստի ի վերայ անապական աթոռոյ:

Մն. Խոնարհեցար ի բարձանց և մարմնացար ի կուսէն. որ նստէիրդ ի քրովբէս արարիչդ արարածոց: Երկինք չէին բաւական փառաց անմահ անեղիդ. արգանդ կուսին ժամկալ եղև ընդունել զզանձդ երկնային: Ցորմէ սարսեալ սերովբէքն ոչ իշխէին մերձենալ. և խոնարհութեամբ պատեցան և եղար ի մսուր յանբանից:

Մն. Զքեզ Հայր յաւուր քոյ զյայտնութեանս բարեբանեն զուարթունք անմարմնոց հրեշտակաց. ձայնիւ երգովք գովեն և աղաղակեն. ‖ Աստուած անստուածող և Տէր ամ.

րանց փրկիչ գոլով։ Առաքեցեր զքո Միածինդ մարմնանալ ի սուրբ կուսէն. եւ անարատ ծննանիլ յորովայնէ անապականն. բառնալով զմեր նեղութիւնս. Աստ։ Շնորհք բարի յԵրուսաղէմ երեւեցաւ հեթանոսաց. զի արարիչն յաւիտենից տղայ եղեալ յորդեգրութիւն կենաց կոչէ. Աստուած։

ԾՆ. Ընդ քեզ կոյս և մայր և բնակարան աստուածային ներմարդութեանն. գոհաբանեմք և վերօրհնեմք զեղեալ փրկող կենդանութեան ազգի մարդկան. || Վասն որոյ ընդ քեզ Աստուածածին և կոյս. բարեբանեմք զմայր և զաղախին փրկչին մերոյ։ Ծնունդն Հօր և հինաւուրց անժամանակն յաւիտենից. ժամանակաւ յորովայնի քում բնակեցաւ և ի Հօրէ ոչ մեկնեցաւ. վասն որոյ։ Ծնեալն ի քէն ի խաչ ելեալ եւ ի յաթոռ փառաց ընդ Հօր. անարգեալ ի մարդկանէ փառաւորութեամբ էութեամբ երկրպագեալ. վասն որոյ։ Ընդ քեզ ոչ միայն որդիք մարդկան այլ եւ վերին զօրութիւնք. դասք անմարմնոց հոգեղինաց հրեղինաց զուարթնոց եւ հրեշտակաց. գոհաբանեն և վերօրհնեն եւ փառաւորեն զմայր և զաղախին փրկչին մերոյ։

ԾՆ. Բանն առաքեալ ի Հօրէ.. որ վասն մեր մարմնացաւ.. եւ ցնծութիւն աշխարհի յայտնեցաւ. || Ընդ քեզ բարեբանեմք Աստուածածին կոյս։ Զի որում ոչըն հանդուրժէին.. բոցանըշոյլ սերովբէքն. նա բնակեցաւ ի քում յորովայնի. ընդ քեզ։ Յորմէ սարսեալ դողային.. փայլակնացայտ ի լուսոյն. ի գիրկըս քո զնա ընկալար. ընդ քեզ։

ԾՆ. Ընդ կուսութիւնդ քո Աստուածածին անարատ. զոր ոչ բոցակերպ զգեաց հուր աստուածութեանն մեծացուցանեմք։ Որ յարգանդի քում անապականաբար

մաղթեա ընդ մեր ըզնոյն փրկել ըզմեզ յահեղ բոցոյն. համագումարել ընդ արդարոցն երգել ըզփառս ընդ երկնայնոցն ։

ՀԳ. Նոյն եւ նման Հօր եւ Որդւոյ Հոգիդ անեղ և համագոյ. բղխումն Հօր անքննաբար առող յՈրդւոյ անճառաբար. ի վերնատունն այսօր իջեր զՀոգիդ շնորհաց քոց առաքելոց. Օրհնեա և մեզ ողորմութեամբ ի բաժակէդ իմաստութեան։ Էից ստեղծող արարածոց որ շրջեիր ի վերայ ջրոց. Նոյն և ի ջուրսն աւազանին ի շնորհել մեզ քում էակցին. զգեցուցես սիրով ողջանակերպ զմարդիկ ծնանիս աստուածակերպ. Օրհնեա։ Բարբառն վերնոցն իմանալեաց և ըստորին այսըր զգալեաց. որ մարգարէս տաս ի հովուաց և առաքեալս ի ձկնորսաց. աւետաւոր ըզմաքսաւորս քարոզ բանի քում զհալածողս. Օրհնեա։

ՀՆ. Հրեշտակային ձայնիւն օրհնեսցուք զամենասուրբ զԵրրորդութիւնն փառաւորելով ըզՀայր. որ վերակոչեաց զամենեսեան ի մահուանէ յանմահութիւն։ Երգեցէք Տեառն երգ նոր եկեղեցիք սըրբեցելոց. Քրիստոսի երկրպագելով. որ վերադարձեաց զամենեսեան։ —Փառք Հօր։ Սրբասաց ձայնիւն օրհնեսցուք հոգեւորական հընչմամբ գովեսցուք. սուրբ զՀոգին փառաւորելով. որ վերահանգոյց զամենեսեան ։

—Այժմ և միշտ։ Գեղմն իմանալի զոր ետես Գեդէոն յառաջ քան զայս հաւատացեալ. իմանամք զանճառ ունելի ըզծնունդ. եւ երկրպագեմք որ ի կուսէդ մարմնացաւ Աստուածդ ։

Ալէլուիա Ճրագալուցի Ծննդեան. Առաքեաց զբան իւր և։

---

ՅԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԴՁ

Որ դասուց երկնաւորաց անիմանալի. այսօր հոգե-

զինաց յայտնեցեր ըզծածկեալ խորհուրդ. Օրհնեալ Տէր Աստուած հարցն մերոց: Որ բազմաչեայ քերովբէից անտեսանելի. կերպացեալ ըզմեզ ի սրբոյ կուսէն տընօրինարար. օրհնեալ: Որ առաւել բարեբացեալ ես յաւիտենից. մըշտնջենաւոր լըցուցիչ և աղբիւր կենդանարար. օրհնեալ:

Գ. ԸզՏէր օրհնեցէք և բարձր արարէք ըզնա յաւիտեան: Որ ըզկերպարանս ծառայի էառ. և ըզմեզ ի մարմնի իւրում դատապարտեաց. անդադար գովել բարձր: Որ այսօր մարմնացաւ ի սրբոյ կուսէն յաղագս անիծիցն. և երարձ ըզպատուհաս նախաստեղծին. ժողովուրդք առաւել բարձր: Որ եկն ի բարձունս գերեալ ըզզօրութիւն մահու. այսօր բաշխէ անապականութեան պարգևք մարդկան. քահանայք հոգևորք երգով առաւել բարձր:

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԴՁ

Ուրախացիր Աստուածածին վերօրհնեալդ ի սրբովբէից. ծագեցիր ի քէն մեզ լոյս մայր եղեր վերածնողին. Ազգ և ազինք ըզքեզ մեծացուցանեմք: Հիմն եղեր եկեղեցւոյ խորան եղեր Հոգւոյն սրբոյ. ի հրեշտակաց սպասաւորեալ Գաբրիէլ քեզ աւետեաց. ազգ: Տեսանեմք ըզսոսկալի զհրաշալի խորհուրդ յայտնեալ. ի Հոգւոյն սրբոյ յղացեալ զԲանն Աստուած մարմնով ծընար. ազգ:

ՈՂՈՐՄԵԱ ԲՁ

Անկանիմք առաջի քո Աստուածածին. և աղաչեմք զանարատ ըզկոյսդ: Բարեխօսեա վասն անձանց մերոց. և աղաչեա զՄիածին Որդիդ: Փրկել ըզմեզ ի փորձութենէ. և յամենայն վըտանգից մերոց:

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԲՁ

Օրհնեմք ըզքեզ Աստուած ընդ անմարմնոցըն դասուց. որ ի բարձունսդ ես բնակեալ ‖ խնայեա ի քո արարածս: Գովեմք ըզքեզ միածին Որդի եւ Բանդ Աստուած. որ ի կուսէն մարմնացար խնայեա: Բարեբանեմք սուրբ զՀոգիդ որ նորոգողդ ես և կեանք. եւ միաբան սամացուք փառք ի բարձունս Աստուծոյ:

Առաւօտու Երգ. Իջցէ որպէս զան: Աստուած զիրաւու:

Քար. փառաւորեսցուք:

ՄԱՆԿՈՒՆՔ ԴՁ

Ծածկումըն հրաշալի որ անյայտ էր ի մէնջ. եւ Բանըն հայրական անըմբռնելի. հուր փայլակնացեալ և ի մարմնի բնակեցաւ. անվըխնամս պահելով զարարածս ամենայն: Ծածկումըն հրաշագործ որ ի կուսէն ծագեցաւ. ճառագայթելով զարարածս ամենայն. Երկինք ցընծային և երկիր ուրախանայր. եւ Քրիստոս Աստուած ընդ մարդկան շըրջեցաւ: Առ քեզ ապաւինիմք Ամենասըրբուհի. գերագոյն և հրաշալի եւ բաշխող բարութեանց. աղբիւր ես ծարաւեաց եւ հանգիստ աշխատելոց. եւ եղեր վերընկալ Աստուածային Բանին:

Զհնչ Մանկանց Քար. Վասն խաղաղ. Աղ. Սուրբ ես: Աղօ

ՍԱՂՄՈՍ ՀԱ. Յայնժա

ԿՑ. Իջցէ որպէս զանձրեւ: Փխ. Աստուած զիրա: 968:

Ալէլուիա, Օրթի

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու: Ա. 26:

Ի Հօրէն ամենակալէ

Եւ յամսեանն վեցերորդի առաքեցաւ Գաբրիէլ: 297:

Զհնչ Առաւօտեանն զԱրարչականն ասա զինչ և օրն բերէ:

Քարոզ Խնդր: Կեցո. Յայնժա: Աղօթ Աստուած մշտնջենա:

Եւ ըստ կարգի հանդիսի՝ դասն զՄանկանցն Ողորմեա՝ Մեծա-ցուսցէ ասա. և խաղաղականս առաւօտեան կարգաւ է Յայտնեան ճաշին. Գիշերի. Զյարութիւն ասա յոր Յայտն և ընթ: Քար. Առաւօտուք:

Զինի Սուրբ Աստուածին Մաղ. Փրկեա: Քարոզ Վասն լսելի: Քահ. Օրհնութիւն և փառք: Եւ ապա

## ՍԱՂՄՈՍ ՃԺ. Յայտն

ԿՑ. Փրկութիւն առաքեաց Տէր ժողովրդեան իւրում, պատուիրեաց յաւիտենից զուխտ իւր. սուրբ և ահեղ է անուն Նորա:

Փխ. Խոստովան եղէց քեզ Տէր բոլորով սրտիւ: 461:

## Ալէլուիա, Օրթի

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Յովհաննու: Ա. 1:

### Ի Հօրէն լուսոյ

Ի սկզբանէ էր Բանն, և Բանն էր առ Աստուած, և Աստուած էր Բանն. Նա էր ի սկզբանէ առ Աստուած: Ամենայն ինչ Նովաւ եղև, և առանց նորա եղև և ոչինչ որ ինչ եղևն: Նովաւ կեանք էր, և կեանքն էր լոյս մարդկան, և լոյսն ի խաւարի անդ լուսաւորէ, և խաւար Նմա ոչ եղև հասու: Եղև այր մի առաքեալ յԱստուծոյ, անուն Նմա Յովհաննէս. սա եկն ի վկայութիւն զի վկայեսցէ վասն լուսոյն, զի ամենեքին հաւատասցեն Նովաւ. ոչ էր Նա լոյսն, այլ զի վկայեսցէ վասն լուսոյն: Էր լոյսն ճշմարիտ, որ լուսաւոր առնէ զամենայն մարդ՝ որ գալոց է յաշխարհ: Յաշխարհի էր, և աշխարհ Նովաւ եղև, և աշխարհ զնա ոչ ծանեաւ: Յիւրսն եկն, և իւրքն զնա ոչ ընկալան. իսկ որք ընկալան զնա՝ ետ նոցա իշխանութիւն որդիս Աստուծոյ լինել, որոց հաւատասցեն յանուն նորա. որք ոչ յարենէ, և ոչ ի կամաց մարմնոյ, և ոչ ի կամաց առն, այլ յԱստուծոյ ծնան: Եւ Բանն մարմին եղև, և բնակեաց ի մեզ. և տեսաք զփառս Նորա զփառս իբրև զմիածնի առ ի Հօրէ, լի շնորհօք և ճշմարտութեամբ: Յովհաննէս վկայէ վասն Նորա, աղաղակեաց և ասէ. սա է՝ զորմէ ասէի, որ զկնի իմ գալոցն էր, առաջի իմ եղև, զի նախ քան զիս էր: Զի ի լրումնէ անտի նորա մեք ամենեքին առաք շնորհս փոխանակ շնորհաց: Զի օրէնքն ի ձեռն Մովսիսի տուան, շնորհքն և ճշմարտութիւնն ի ձեռն Յիսուսի Քրիստոսի եղեն: 17:

Զինի աւետարանին Երգ Նորաստեղծ: Քար. Խնդրեսցուք: Կցոր. Յայտն: Աղ. Աստուած մշտնջենաւոր: Եւ Քում ամենակալ:

## Ց Ե Ր Ե Կ Ո Ց Ի Ն

Ի յետին ժամն ժողովին է դասն եկեղեցւոյն, և երախոկողան կամ ատաքերեցն՝ ասէ.

Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս, ամէն. Հայր մեր։ Եւ սկսանին ատաքերեցն դասն

### Ձայնէ ՍԱՂՄՈՍ ԻԲ.

Տէր հովուեսցէ զիս և ինձ ինչ ոչ պակասեսցէ ։ 815։

Ձայնէ Քոր. Եւ եւս խաղաղութեան ։ Երախոկողան կամ ատաքե-րեցն ասէ. Օրհնութիւն և փառք ։

### Դարձեալ ՍԱՂՄՈՍ ՀԹ. ձայնէ

Որ հովուեսդ Իսրայէլի նայեաց, որ առաջնորդես։ 456։

Առաջին ատենադպրաց ատաքերեցն դասուն է։

### Ալէլուիա, Օրթի

Սրբոյ Աւետարանին որ ըստ Ղուկասու։ Բ. 8.

Վասն ծննդեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ։

Եւ հովիւք էին ի տեղւոջն յայնմիկ բացօթեաք, որք պահէին զպահպանութիւնս գիշերոյ հօտից իւրեանց։ Եւ հրեշտակ Տեառն երեւեցաւ նոցա, և փառք Տեառն ծագեցին առ նոսա, և երկեան երկիւղ մեծ։ Եւ ասէ ցնոսա հրեշտակըն. մի՛ երկնչիք, զի աւետարանեմ ձեզ ուրախութիւն մեծ, որ եղիցի ամենայն ժողովրդեանն. զի ծընաւ ձեզ այսօր փրկիչ, որ է օծեալ Տէր, ի քաղաքի Դաւթի ։ Եւ այս նշանակ ձեզ, գտանիցէք մանուկ պատեալ ի խանձարուրս, և եդեալ ի մսուր։ Եւ յանկարծակի եղև ընդ հրեշտակին ընդ այնմիկ բազմութիւն զօրաց երկնաւորաց, որ օրհնէին զԱստուած և ասէին. փառք ի բարձունս Աստուծոյ, և յերկիր խաղաղութիւն, ի մարդիկ հաճութիւն։ Եւ եղև իբրև վերացան ի նոցանէ հրեշտակքն յերկինս, ասեն ցմիմեանս հովիւքն. եկայք երթիցուք մինչև ցԲեթղեհէմ, և տեսցուք զինչ է բանս այս որ եղև, զոր Տէր եցոյց մեզ։ Եւ եկին փութանակի, և գտին զՄարիամ և զՅովսէփ, և զմանուկն եդեալ ի մսուր, և ծանեան վասն բանին՝ որ ասացաւ նոցա զմանկանէն։ Եւ ամենեքին որ լսէին՝ զարմանային վասն բանիցն զոր խօսեցան ընդ նոսա հովիւքն։ Եւ Մարիամ զամենայն զբանս զայսոսիկ պահէր, և խելամուտ

լինէր ի սրտի իւրում։ Եւ դարձան հովիւքն՝ փառաւոր առնէին և օրհնէին զԱստուած վասն ամենայնի զոր լուան և տեսին, որպէս պատմեցաւ նոցա։ 20։

Դարձեալ ՍԱՂՄՈՍ Բ. Ձայնի

Կց. Տէր ասաց ցիս, որ։ Փխ. Ընդէ՞ր խռովեցան։ 437։
Քար. Եւ ես խաղաղու։ Քահ. Օրհնութիւն և փառք։

Դարձեալ ՍԱՂՄՈՍ ՃԹ. Ձայնի

Կց. Ի վայելչութիւն սրբոց քոց յարգանդէ յառաջ քան զարուսեակ ծնայ զքեզ։
Փխ. Ասաց Տէր ցՏէր իմ, նիստ ընդ աջմէ իմմէ։ 461։

Ալէլուիա, Օրթի

Սրբոյ Աւետարանին որ ըստ Մատթէոսի։ Ա. 18։

Տեառն մերոյ

Յիսուսի Քրիստոսի ծնունդն էր այսպէս։ Խօսեցեալ զմայր նորա Մարիամ Յովսեփու, մինչչև եկեալ առ միմեանս՝ գտաւ յղացեալ ի Հոգւոյն սրբոյ։ Եւ Յովսէփ այրն նորա, քանզի արդար էր և ոչ կամէր առակել զնա, խորհեցաւ լռելեայն արձակել զնա։ Եւ մինչդեռ նա զայս ածէր զմտաւ, ահա հրեշտակ Տեառն ի տեսլեան երևեցաւ նմա՝ և ասէ. Յովսէփ՝ որդի Դաւթի, մի երկնչիր առնուլ առ քեզ զՄարիամ կին քո. քանզի որ ի նմայն ծնեալ է՝ ի Հոգւոյն սրբոյ է. ծնցի որդի, և կոչեսցես զանուն նորա Յիսուս. զի նա փրկեսցէ զժողովուրդ իւր ի մեղաց իւրեանց։ Այլ այս ամենայն եղև, զի լցցի որ ասացաւն ի Տեառնէ ի ձեռն Եսայեայ մարգարէի. Ահա կոյս յղասցի և ծնցի որդի, և կոչեսցեն զանուն նորա Էմմանուէլ, որ թարգմանի՝ ընդ մեզ Աստուած։ Եւ զարթուցեալ Յովսէփ ի քնոյ անտի՝ արար որպէս հրամայեաց նմա հրեշտակն Տեառն, և առ յինքն զկինն իւր. և ոչ գիտէր զնա, մինչև ծնաւ զորդին իւր զանդրանիկ, և կոչեաց զանուն նորա Յիսուս։ 25։

Քար. Եւ ես խաղաղու։ Քահ. Օրհնութիւն և փառք։

Եւ այլ սովորականքն խնկարկեցո և Ապրեցո։
Օրհնեալ Տէր որ։ Եւ ըն կերակուր լինի, ըստ օրին ասա։
ՄԵՍՆԵԴԻ. Տէր ասաց ցիս։ Ընդէ՞ր խռովեցան հեթա։
Քար. Աղաչեսցուք զամենակալն։ Եւ ըն կերակուր լինի Ասասցուք։

ՀԱՄԲԱՐՁԻ ԲՁ

Անկանիմք առաջի քո Աստուածածին և աղաչեմք ։ 1098 ։

Քոր · Վասն խաղաղութեան ։ Աղ · Հայր գթած ։ Աղ-

ՍԱՂՄՈՍ ԺԼԱ · Է ԲԷ-

Յիշեա Տէր զԴաւիթ, և զամենայն հեզութիւնն նորա ։ 956 ։

Եւ ընթեռնուն շարքնոռով շիոկլգեանէն, և զայլ մարգարէական-թըն, ԺԱ ծուն ։

Ընթերցուած ի Ծննդոց ։ Ա · 1 ։

Իսկզբանէ արար Աստուած զերկին և զերկիր ։ 347 ։

Ընթերցուած յԵսայեայ մարգարէէ ։ Է · 10 ։

Եւ յաւել Տէր խօսել ընդ Աքազու՝ և աս է · խնդ ։ 958 ։

Ընթերցուած յԵլից ։ ԺԴ · 24 ։

Եւ եղև յառաւօտին պահու հայեցաւ Տէր ի բա ։ 515 ։

Ընթերցուած ի Միքիայ մարգարէէ ։ Ե · 2 ։

Եւ դու Բեթղեհէմ, տուն Եփրաթայ սակաւաւոր, իցես լինել ի հազարաւորս Յուդայ · ի քէն ելցէ ինձ լինել իշխան Իսրայելի, և ելք նորա ի սկզբանէ աւուրց աշխարհի ։ Վասըն այնորիկ տացէ զնոսա մինչև ի ժամանակ ծննդականին · ծնցի՝ և մնացորդք եղբարց նորա դարձցին առ որդիսն Իսրայելի ։ Եւ կացցէ, և տեսցէ և հովուեսցէ հօտի իւրոյ զօրութեամբ Տեառն, և ի փառս անուան Տեառն Աստուծոյ իւրեանց հաստատեսցին · զի այժմ մեծասցին մինչև ի ծագս երկրի ։ Եւ եղիցի նմա խաղաղութիւն, յորժամ եկեսցէ Ասորեստանեայն յերկիր ձեր՝ և յորժամ հասցէ յաշխարհ ձեր, յարուսցէ ի վերայ նորա եօթն հովիւ և ութ վարիչ մարդկան · և հովուեսցեն զԱսորեստանեայն սրով, և զերկիրն Նեբրովթայ ի պատնիշի իւրում, և փրկեսցէ զքեզ յԱսորեստանւոյն՝ յորժամ եկեսցէ յերկիր ձեր, և յորժամ հասցէ ի վերայ սահմանաց ձերոց ։ Եւ եղիցի մնացորդն Յակովբայ ի հեթանոսս ի մէջ ազգաց բազմաց՝ իբրև ցօղ անկեալ ի Տեառնէ, և իբրև զգառինս ի վերայ սիզոյ, որպէս զի մի՛ ժողովեսցի և մի՛ մի, և մի՛ մնասցէ ի մէջ որդւոց մարդկան ։ 7 ։

Ընթերցուած յԱռակաց ։ Ա · 1 ։

Ճանաչել զիմաստութիւն և զխրատ, իմանալ զբանս

հանճարոյ, ընդունել զդարձուածս բանից, ի միտ առնու զարդարութիւն ճշմարիտ, և ուղղել զիրաւունս: Զի տացէ անմեղաց զխորագիտութիւն, մանկանց տղայոց զմիտ և զհանճար: Որոց իբրև լուիցէ իմաստունն՝ իմաստնագոյն լիցի, իսկ որ հանճարեղն իցէ՝ զառաջնորդութիւն ստասցի: Ի միտ առցէ զառակս և զբանս խորինս, զճառս իմաստնոց և զառակս նոցա: Սկիզբն իմաստութեան երկիւղ Տեառն, հանճար բարի ամենեցուն որ առնեն զնա. պաշտօն բարի առ Աստուած՝ սկիզբն զգօնութեան. զիմաստութիւն և զխրատ՝ ամպարիշտք անգոսնեն: Լուր որդեակ խրատու հօր քո, և մի՛ մերժեր զօրէնս մօր քո, զի պսակ շնորհաց ընկալցիս ի գլուխ քո, և մանեակ ոսկի ի պարանոցի քում: 9:

Ընթերցուած յեսայեայ մարգարէէ: Թ. 5:

Այլ նոքա կամէին թէ հրձիգ լեալ էին, զի մանուկ ծնաւ մեզ, որդի տուաւ մեզ, որոյ իշխանութիւն իւր եղև ի վերայ ուսոց իւրոց. և անուն կոչեցաւ նմա՝ Հրեշտակ մեծի խորհրդոյ, սքանչելի խորհրդակից, Աստուած, հզօր իշխան, հայր հանդերձելոյ աշխարհին: Եւ ես ածից զխաղաղութիւն ի վերայ իշխանաց նորա, և առողջութիւն նմա. մեծ է իշխանութիւն նորա, և խաղաղութեան նորա չիք սահման: Յաթոռն Դաւթի նստցի, և զթագաւորութիւն նորա յաջողեսցէ, և զօրացուսցէ զնա իրաւամբք և արդարութեամբ, յայսմհետէ և յաւիտեանս ժամանակաց. նախանձ Տեառն զօրութեանց արասցէ զայս: 7:

Ընթերցուած յեսայեայ մարգարէէ: ԺԱ. 1:

Եւ բղխեսցէ գաւազան յարմատոյն Յեսսեայ, և ելցէ ծաղիկ յարմատոյ անտի: Եւ հանգիցէ ի վերայ նորա հոգի Աստուծոյ, հոգի իմաստութեան և հանճարոյ, հոգի խորհրդոյ և զօրութեան, հոգի գիտութեան և աստուածպաշտութեան. և լցէ զնա հոգի երկիւղի Աստուծոյ: Ոչ ի կարծ դատեսցի, և ոչ ըստ խօսից յանդիմանեսցէ: Այլ արասցէ իրաւունս տնանկին, և յանդիմանեսցէ զխոնարհս երկրի. և հարցէ զերկիր բանիւ բերանոյ իւրոյ, և հոգւով շրթանց իւրոց սատակեսցէ զամպարիշտս: Եւ եղիցի արդարութիւն ածեալ ընդ մէջ իւր, և ճշմարտութեամբ պատեալ զկողս իւր: Եւ ճարակեսցէ գայլ ընդ գառին, և ինձ առ ուլու մակաղեսցի, և որթ և ցուլ. և առիւծ ի միասին

Digitized by Google

ճարակեսցին, և մանուկ մատաղ ածցէ զնոսա ։ Եզն և արջ ի միասին ճարակեսցին, և որդեակք նոցա խառն շրջեսցին, և առիւծ իբրև զեզն յարդ կերիցէ ։ Եւ մանուկ մատաղ ի ծակ իժից և ի բոյն կորեանց իժից արկցէ զձեռն իւր, և ոչ մեղիցեն և ոչ կարասցեն հարկանել զոք ի լերին սրբութեան իմոյ. զի լցաւ երկիր ամենայն՝ գիտութեամբ Տեառն իբրև զջուրս բազումս որ ծածկեն զծովս ։ 9 ։

Ընթերցուած յԻսայեայ մարգարէէ: Լե. 3:

Զօրացարուք՝ ձեռք լքեալք և ծունկք կթուցեալք, մխիթարեցարուք՝ կարճամիտք սրտիւք, զօրացարուք և մի՛ երկնչիք ։ Ահաւասիկ Աստուած մեր հատուցանէ դատաստան և հատուսցէ, ինքնին եկեսցէ և փրկեսցէ զմեզ ։ Յայնժամ աչք կուրաց բացցին և ականջք խլից լուիցեն, յայնժամ վազեսցէ կաղն իբրև զեղջերու, և պարզ լիցի լեզու ծանրախօսաց ։ Զի ջուր բղխեաց յանապատի, և գետ ի ծարաւուտ երկրի. և եղիցի անջուրն յաղտիւրս և աղբիւր ջուրց ի ծարաւուտ երկրի ։ Անդ եղիցի ուրախութիւն հաւուց և մակաղատեղք խաշանց, անդ մարգագետինք և խաղք ։ Անդ եղիցի ճանապարհ մաքրեալ, և ճանապարհ սուրբ կոչեսցի, և մի՛ անցցէ ընդ նա պիղծ, և մի՛ եղիցի անդ ճանապարհ պղծոց. այլ ցրուեալքն գնասցեն ընդ նա և մի՛ մոլորեսցին ։ 8 ։

Ընթերցուած յԻսայեայ մարգարէէ: Խ. 10:

Ահաւասիկ Աստուած ձեր, ահաւասիկ Տէր, Տէր գայ զօրութեամբ և բազուկն տէրութեամբ իւրով. ահաւասիկ վարձք իւր ընդ իւր, և գործք առաջի նորա ։ Իբրև հովիւ մի հովուեսցէ զխաշինս իւր, և բազկաւ իւրով ժողովեսցէ զգառինս, և ի ծոց իւր կրեսցէ զնոսա, և մխիթար լիցի յղեաց ։ Ո՞ չափեաց ափով իւրով զջուրս, և զերկինս թըզաւ, և զերկիր ամենայն՝ քլաւ. ո՞ կշռեաց զլերինս կշռով, և զդաշտս կշռորդաւք ։ Ո՞ գիտաց զմիտս Տեառն, և ո՞ եղև նմա խորհրդակից՝ եթէ խելամուտ արասցէ զնա. կամ ընդ ո՞ւմ խորհեցաւ՝ և արար զնա խելամուտ, կամ ո՞ եցոյց նմա զդատաստան և զճանապարհ իմաստութեան, կամ ո՞ ետ նմա փոխ յառաջագոյն՝ և հատուցանիցէ նմա ։ Եթէ ամենայն հեթանոսք իբրև զկաթիլ մի ի դուլէ են, և իբրև զմէտ մի ի կշռոց համարեցան, և իբրև շիթք ի բերանոյ համարեսցին ։ Եթէ լիբանան չէ բաւական յայրումն, և ամենայն



Digitized by Google

չորքոտանիք չեն բաւական յողջակէզս, և ամենայն հեթա-նոսք ոչ ինչ են, և յոչինչ համարեցան նմա : 17:

Ընթերցուած յեսայեայ մարգարէէ: ԽԲ. 1:

Յակոբ ծառայ իմ, օգնական եղէց նմա. Իսրայէլ ըն-տրեալ իմ զոր ընկալաւ անձն իմ. ետու զոգի իմ ի վերայ նորա, և իրաւունս հեթանոսաց հանցէ : Մի աղաղակեսցէ և մի վիճեսցի, և մի ոք լուիցէ արտաքոյ զբարբառ նորա. զեղէգն ջախջախեալ մի բեկցէ, և զպատրոյգն առկայծեալ մի շիջուսցէ : Այլ հանցէ ի ճշմարտութիւն զիրաւունս. ծագեսցէ՝ և մի խորտակեսցի. մինչև դիցէ յերկիր զդա-տաստան, և յանուն նորա հեթանոսք յուսասցին : Այսպէս ասէ Տէր Աստուած՝ որ արար զերկինս և կանգնեաց զնա, որ հաստատեաց զերկիր և որ ի նմա, որ ետ շունչ մարդկանն որ ի վերայ նորա, ոգի ամենեցուն որ կոխեն զնա : Ես Տէր Աս-տուած կոչեցի զքեզ արդարութեամբ, կալայց զաջոյ ձեռա-նէ քումմէ և զօրացուցի զքեզ, և ետու զքեզ յուխտ ազ-գին՝ և ի լոյս հեթանոսաց. Բանալ զաչս կուրաց, հանել զկապեալս ի բանտէ և ի տանէ կապանաց որ նստէին ի խաւարի. Ես Տէր Աստուած, այս է անուն իմ. զփառս իմ այլում ոչ տաց, և ոչ զքաջութիւնս իմ դրօշելոց : 8:

Յառաջ ընթերցուածոցս [illegible] շարականն է [illegible] : Եւ [illegible] [illegible] :

Ընթերցուած ի Դանիէլէ մարգարէէ: Գ. 1:

Յամին ութուտասաներորդի Նաբուգոդոնոսորայ : 524:

Եւ յորժամ զՕրհնեցէք ամենայն գործք ասեն, [illegible] եղանակէն [illegible] [illegible] .

Օրհնեցէք գովեցէք և բարձր արարէք զնա յաւիտեանս:

Ի կատարման [illegible] [illegible], [illegible] [illegible] և [illegible] [illegible] [illegible] [illegible]. Օրհնեա տէր. Եւ [illegible]. Օրհ-նեալ Թագաւորութիւն : Եւ [illegible] [illegible]:

Զկնի [illegible] [illegible] [illegible] Նախատօնակ [illegible] Ծնն-դեան Տեառն և այլն

ՇԱՐԱԿԱՆ ԴԿ

Խորհուրդ մեծ և սքանչելի որ յայսմ աւուր : 1107:

Զկնի Օրթի

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու : Բ. 8:

Վասն ծննդեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի:

Եւ հովիւքէին ի տեղւոջն յայնմիկ բացօթեագք : 1101:

Ալէ. Քար. Սուրբ զԱստ : կեցո. [illegible] : Աղ. Ընկալ Տէր:

---

# ԾՆՈՒՆԴ
## ՏԵԱՌՆ ՄԵՐՈՅ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ
### ի Դեկտեմբերի քսանևհինգ



### Ի ԳԻՇԵՐԻ

ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԴԿ

Խորհուրդ մեծ և սքանչելի որ յայսմ աւուր յայտնեցաւ. հովիւքն երգեն ընդ հրեշտակս տան աւետիս աշխարհի: Ծնաւ նոր արքայ ի Բեթղեհէմ քաղաքի. որդիք մարդկան օրհնեցէք զի վասն մեր մարմնացաւ: Անբաւելին երկնի և երկրի ի խանձարուրս պատեցաւ. որ մեկնելով ի Հօրէ ի սուրբ յայրին բազմեցաւ:

† Այսօր ցնծան երկինք ի վերուստ մեծապայծառ աւետեօք. եւ արարածք ամենայն. զգեցան հանդերձ փրկութեան: Այսօր յայրին ընծայեցաւ Քրիստոս Որդին Աստուծոյ. եւ հրեղինաց բազմութիւնքն յերկնից յերկիր վայր իջեալ: Այսօր հովուացն տեսեալ զարդարութեան արեգակն. եւ ընդ հրեշտակս երգեին փառք ի բարձունս Աստուծոյ:

† Ի Հօրէ ծագեցար. լուսաւորել զարարածս. Արդարութեան արեգակն Տէր փառք քեզ: Ծնար ի յայրին. ընծայեցաւ Բեթղեհէմ. ա: Հովուաց յայտնեցար. երկրպագեալ ի մոգուց. ա:

Ծն. Այսօր Բանն ի Հօրէ անմեկնելի եւ անճառելի խորհրդով. ի ձեռն Գաբրիէլին կուսական որովայնին տնօրինաբար յերկիր երեւեալ: Մանուկ անժամանակ ի Հօրէ անսերմն ի կուսէ. ի գիրկս մօր գրգուեցաւ այսօր արարիչն երկնի եւ երկրի: Որ մաքրեաց ըզ-Յորդանան և լուաց զմեղս աշխարհի. զոր օրհ-

Digitized by Google

նեսցեն անդադար արարածք ամենայն. զէակիցն Հօր եւ Հոգւոյն։

Ծն. Աստուածածին սուրբ կոյս անապական տաճար. անպարագիծ Էին բոլորից բնութեանց լայնածաւալ տեղի. այսօր ընդ երկրային զուարթնոյն կրեցեր աւետեաց զՏէրն տերանց ի քեզ. Առ որ մաղթեմք բարեխօսել վասն մեր անլռելի ձայնիւ։ Էմմանուէլի վտակաց ամանն Աստուծոյ հոսմանց. վիճակեալք տեսանողացըն ձայնի արբմամբ ըզմայլեցար. այսօր զանթառամն ծաղկեցար ըզծաղիկն ի ժամու ամլոյ զպըտուղն. Առ։ Այսօր ի քեզ լըցեալ Ամովսեանին բարբառ. որ ի փրկութիւն համայնականաց տուեալ նշան բնութեան ազգի մարդկան. ահա կոյս յղասցի եւ ծնցի որդի զընդ մեզ յայտնեալն Աստուած. Առ։

Ծն. Ըզքեզ Աստուածածին. աղբիւր անսպառ լուսոյն. որ լուսաւորէ զհաւատացեալս. Միաբանական ձայնիւ երգով մեծացուցանեմք։ Դու ես պարծանք կուսութեան մարդկան. դու ուրախութիւն հրեշտակաց. դու բարձող անիծիցն. վասն որոյ ըզքեզ Աստուածածին. մեծացուցանեմք։ Դու ես ճշմարիտ արեւելք. արեգականն արդարութեան. յորմէ ծագեաց փրկութիւն տիեզերաց. միաբանական։

Ծն. Աստուածածին եւ սրբուհի. որ ըզԲանն Աստուած անսերմն յղութեամբ յարգանդի կրեցեր. Անդադար սմր երգով մեծացուցանեմք։ Զքեզ միայն կուսութեան եւ յղութեան լուսոյ. եւ առագաստ անճառելոյ բընակողին ի քեզ փեսայացեալ Բանին. Անդա. Քեւ լուծան կնիք դատապարտութեանն. եւ քեւ կանգնեցաւ մեղուցեալ մայրըն գլորեալ. վասն որոյ ըզքեզ Աստուածածին եւ կոյս. անդադար։

Ծն. Միայնոյ քեզ ի կանայս կոյս յետ ծննդեան երգեմք զօրհնութիւն. զի լոյս ի լուսոյ քեւ յայտնեցաւ աշխարհի և զնախամօրն եբարձ զանէծս. անճառ ծննդեամբն ի քէն: Քեզ միայնոյ մարմնացելոյդ ի սուրբ կուսէն. օրհնութիւն ի բարձունս վերերգեմք ասելով. փառք քեզ Քրիստոս որ եկիր կամաւ Հօր կեցուցանել զմեզ: Խնդա Մարիամ. որ եղեր մայր Քրիստոսի. եւ աղաչեա զնա ի քէն զմարմնացեալ Բանն Աստուած. զի փրկեսցէ զմեզ ի փորձութենէ:

Հգ. Հոգիք հրեղինացն. այսօր տօնեն ընդ մեզ զգալուստ Հոգւոյն Աստուծոյ: Տեսանողն յառաջ. նշանակէր զառատաբուղխ վտակ իմաստից ի մեզ հեղեալ ի Հոգւոյն: Վէմն հաւատոյ. զմայլեալ անմահական բաժակաւն. այսօր բաշխէր ծարաւեաց: Գետոցս այս զնացիք. ցնծայ քաղաքն Աստուծոյ Սիոն մայր եկեղեցի: Վասն որոյ և մեք. երրեակ և մի աստուածութեանն երգեմք զփառս ի բարձունս:

Հն. Որ ի Հօրէ առաքեցար մարդասէր կարող փրկիչ. եւ զմեղուցեալ զմարդն բժշկեցեր. Ողորմեա Տէր հրաժարելոյս զոր հրաւիրեալ առ քեզ կոչեցեր: Որ ի խաչին բեւեռեցար մարդասէր կարող փրկիչ. եւ զզօղ անապական արեանդ ցօղեցեր տիեզերաց. ողորմեա: — Փառք Հօր: Որ զդժոխս աւերեցեր և զգերեալսն փրկեցեր. եւ զարգելեալսն վերածեր ի յոյս կենացն յաւիտենից. ողորմեա:

— Այժմ և միշտ: Եւ մեք երգեսցուք. որ ի կուսէն մարմնացար. արդարութեան արեգակն Տէր փառք քեզ:

Ալէլուիա Ծննդեան է յայնէն:

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

### ՀԱՐՑ ԳՁ

Անըսկիզբըն էակից Բանըդ Հօր. որ էիր յառաջ քան զյաւիտեանս. եւ եկիր ի փըրկութիւն բանեղ-ծուածոց քոց. Ըզքեզ օրհնեմք Աստըւած հարցըն մե-րոց: Ծընար ի կուսէ աննման միութիւն. անբաժա-նելի եւ միշտ գոլով. ոչ մեկնեցար ի հայրական ծո-ցոյ. Ըզքեզ: Ցընծութեամբ տօնեսցուք ըզծընունդ քո սուրբ. որ յայտնեցար մեզ լոյս ի լուսոյ. եւ լու-սովըդ քո լըցեր ըզտիեզերս. Ըզքեզ:

Գ. Գործըք Տեառն ըզՏէր օրհնեցէք եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան: Ըզծընեալն ի սըր-բոյ կուսէն օրհնեցէք: Զանճառելի ըզծընունդ փըրկչին գովեցէք եւ առաւել բարձր:

### ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԳՁ

Ուրախ լեր Աստուածածին լոյս եւ փըրկութեան մայր. ըզքեզ ընդունող լուսոյ մեծացուցանեմք: Ըզքեզ լուսոյ մայր եւ կոյս, ըզքեզ զանձըդ կե-նաց աստուածային. ձայնիւ ցընծութեամբ մեծացու-ցանեմք: Մայր սուրբ աներատ լուսոյն. հրեշտակային օրհնութեամբ պատուեալ ըզքեզ մեծացուցանեմք:

### ՈՂՈՐՄԵԱ ԳՁ

Ամենիմաստ ամենից Հայր բազմագեղ. խնամող ստեղծող եւ Տէր բոլորից. անեղ եւ էից էակ գոլ միշտ օրհնեալ. դասք անմարմնականացըն յաւէժաբար հընչմամբ: Որ կերպարան եւ կնիք Հօր առեալ զ[illegible]-սըն մեր ծառայի կերպ ի կուսէն. որ էն ի յաթոռ փառաց անտես վերնոցն. ի յայրին իջեւանի եւ ի մըսուր յանբանից բազմեալ: Զի կուսէն մարմնացեալ Բանըն եկայք ժողովուրդք ընդ հովիւսըն բարեբանեա-

ցուք և ընդ մոգուցն երկրպագեսցուք ընդ երկնայինն զօրսն երգեսցուք փառք ի բարձունս Աստուծոյ ։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԳԶ

Ճառագայթ և կերպարան էութեան Հօր Բանդ Աստուած ըզքեզ մեք բարեբանեմք ասելով փառք ի բարձունս Աստուծոյ ։ Որ միացար ի մարմնի անճառապէս ճըշմարիտ Աստուած ըզքեզ ։ Որ զանիծիցըն բարձեր ըզդատապարտութիւն Քրիստոս Աստուած ըզքեզ ։

Ի Տէր յերկնիցն լուցանեն ջահս և մոմս, և շքեղացուցանեն [illegible] և [illegible], և է [illegible] [illegible] [illegible] [illegible] [illegible] է [illegible], և է [illegible] [illegible] [illegible]

# Օրհնի

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու ։ Բ. 8 ։

Վասն ծննդեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ։

Եւ հովիւք էին ի տեղւոջն յայնմիկ բացօթեագք, որք պահէին զպահպանութիւնս գիշերոյ հօտից իւրեանց ։ Եւ հրեշտակ Տեառն երևեցաւ նոցա, և փառք Տեառն ծագեցին առ նոսա, և երկեան երկիւղ մեծ ։ Եւ ասէ ցնոսա հրեշտակըն. մի երկնչիք, զի ահաւասիկ աւետարանեմ ձեզ ուրախութիւն մեծ, որ եղիցի ամենայն ժողովրդեանն. զի ծընաւ ձեզ այսօր փրկիչ, որ է օծեալ Տէր, ի քաղաքի Դաւթի ։ Եւ այս նշանակ ձեզ, գտանիցէք մանուկ պատեալ ի խանձարուրս, և եդեալ ի մսուր ։ Եւ յանկարծակի եղև ընդ հրեշտակին ընդ այնմիկ բազմութիւն զօրաց երկնաւորաց, որ օրհնէին զԱստուած և ասէին. փառք ի բարձունս Աստուծոյ, և յերկիր խաղաղութիւն, ի մարդիկ հաճութիւն ։

Եւ յառաջ [illegible] զփառք ի բարձունս, [illegible] [illegible] [illegible] է [illegible] ։ Եւ [illegible] և [illegible] [illegible] [illegible] ։

Եւ [illegible] [illegible] Աւետարանին [illegible] ։

Եւ եղև իբրև վերացան ի նոցանէ հրեշտակքն յերկինս, ասեն ցմիմեանս հովիւքն. եկայք երթիցուք մինչև ցԲեթղեհէմ, և տեսցուք զինչ է բանս այս որ եղև, զոր Տէր եցոյց մեզ ։ Եւ եկին փութանակի, և գտին զՄարիամ և զՅովսէփ, և զմանուկն եդեալ ի մսուր, և ծանեան վասն բանին՝ որ ատացաւ նոցա զմանկանէն ։ Եւ ամենեքին որ լսէին՝ զարմա-

նային վասն բանիցն զոր խօսեցան ընդ նոսա հովիւքն: Եւ Մարիամ զամենայն զբանս զայսոսիկ պահէր, և խելամուտ լինէր ի սրտի իւրում: Եւ դարձան հովիւքն՝ փառաւոր առնէին և օրհնէին զԱստուած վասն ամենայնի զոր լուան և տեսին, որպէս պատմեցաւ նոցա: 20:

Եւ ապա ընթերցեալն փառք ի բարձունսն երգեն. Եւ յամենայն ժամ:

Իսկ թէ կիրակի հանդիպի, խորհրդոյ աւետարան կարդա: Եւ զի գեղեցիկ մննդեան ասա: Հոյլք հոգեղէնք. Եւ այլն նոյն կարգ է:

Ամենօրհնեալ երգ. Իջցէ որպէս զանձրև: Աստուած զիրաւունս:

Քարոզ Մայր սուրբ:

Եւ առնու սարկաւագն զսուրբ նշանն ի յետ. և ասէ զաղօթ. Գոհանամք զքեզ:

Զենի Սուրբ Աստուածն Մաղ. փրկեա: Քարոզ Վասն լսելի: Քահ. Օրհնութիւն և փառք: Եւ ապա

ՍԱՂՄՈՍ ՃԹ. Յայտնի

Կց. Ի վայելչութիւն սրբոց քոց յարգանդէ յառաջ քան զարուսեակ ծնայ զքեզ:

Փխ. Ասաց Տէր ցՏէր իմ, Նիստ ընդ աջմէ իմմէ: 461:

Եւ կարդան ի դրան Աւետարանս չորս, և յետ ամէն Աւետարանի Շարական մի ասեն:

# Օրթի

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու: Ա. 1:

Քանզի բազումք յօժարեցին վերստին կարգել զպատմութիւն վասն իրացն հաստատելոց ի մեզ, որպէս աւանդեցին մեզ՝ որ ի սկզբանէ ականատեսք և սպասաւորք եղեն Բանին, կամ եղև և ինձ որ ի սկզբանէ զհետ երթեալ էի ամենայնի ճշմարտութեամբ, կարգաւ գրել քեզ, քաջդ Թէոփիլէ. զի ծանիցես զբանիցն որոց աշակերտեցար՝ զճշմարտութիւն: Եւ եղև յաւուրս Հերովդի արքայի Հրէաստանի՝ քահանայ ոմն՝ անուն Զաքարիա ի դասակարգէ Աբիայ, և կին նորա ի դստերաց Ահարոնի և անուն նորա Եղիսաբեթ: Եւ էին արդարք երկոքեին առաջի Աստուծոյ, գնային յամենայն պատուիրանս և յիրաւունս Տեառն անարատք: Եւ ոչ գոյր նոցա որդեակ, քանզի Եղիսաբեթ ամուլ էր, և երկոքեան անցեալ էին զաւուրբք իւրեանց: Եւ եղև ի քահանայանալն նորա ըստ կարգի աւուրցն հա-

սանելոյ առաջի Աստուծոյ, ըստ օրինի քահանայութեանն՝ ենհաս նմա խունկ արկանել՝ մտեալ ի տաճարն Տեառն. և ամենայն բազմութիւն ժողովրդեանն կային յաղօթս արտաքոյ ի ժամ խնկոցն։ Եւ երևեցաւ նմա հրեշտակ Տեառն, զի կայր ընդ աջմէ սեղանոյ խնկոցն. և խռովեցաւ Զաքարիա՝ իբրև ետես, և անկաւ ահ ի վերայ նորա։ Ասէ ցնա հրեշտակն Տեառն. մի երկնչիր Զաքարիա, զի լսելի եղեն աղօթք քո, և կին քո Եղիսաբեթ ծնցի քեզ որդի, և կոչեսցես զանուն նորա Յովհաննէս։ Եւ եղիցի քեզ ուրախութիւն և ցնծութիւն, և բազումք ի ծննդեան նորա խնդասցեն. զի եղիցի մեծ առաջի Տեառն. և գինի և օղի մի արբցէ, և հոգւով սրբով լցցի անդստին յորովայնէ մօր իւրոյ, և զբազումս յորդւոցն Իսրայելի դարձուսցէ ի Տէր Աստուած իւրեանց։ Եւ ինքն եկեսցէ առաջի նորա հոգւով զօրութեամբ Եղիայի՝ դարձուցանել զսիրտս հարց յորդիս և զանհաւանս ՛յիմաստութիւն արդարոց, պատրաստել Տեառն ժողովուրդ կազմեալ։ Եւ ասէ Զաքարիա ցհրեշտակն. և ի՞ւ գիտացից զայդ. զի ես ծեր եմ, և կին իմ անցեալ զաւուրբք իւրովք։ Պատասխանի ետ հրեշտակն և ասէ ցնա. ես եմ Գաբրիէլ՝ որ կամ առաջի Աստուծոյ, և առաքեցայ խօսել ընդ քեզ և աւետարանել քեզ զայդ. և ահա եղիցես համր, և մի՛ կարասցես խօսել մինչև յօրն յորում այդ լինիցի. փոխանակ զի ոչ հաւատացեր բանից իմոց՝ որք լցցին ի ժամանակի իւրեանց։ Եւ ժողովուրդն ակն ունէր Զաքարիայ, և զարմանային ընդ յամելն նորա ի տաճարին. և իբրև ել՝ ոչ կարէր խօսել ընդ նոսա, և իմացան՝ եթէ տեսիլ ետես ի տաճարին, և նա նշանացի խօսէր ընդ նոսա, և կայր պապանձեալ։ Եւ եղև իբրև լցան աւուրք պաշտաման նորա, գնաց ի տուն իւր։ Եւ յետ աւուրցն այնոցիկ յղացաւ Եղիսաբեթ կինն նորա, և թաքուցանէր զանձն ամիսս հինգ, և ասէր. Զի՞նչ գործ գործեաց ընդ իս Տէր, յաւուրս յորս հայեցաւ յիս բառնալ զնախատինս իմ ի մարդկանէ։ 25։

ՇԱՐԱԿԱՆ ԴԿ

Խորհուրդ մեծ և սքանչելի որ յայսմ աւուր յայտ։ 1107։

Զկնէ Օրթի

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու։ Ա. 26։

Ի Հօրէն ամենակալէ

Եւ յամսեանն վեցերորդի առաքեցաւ Գաբրիէլ։ 297։

Digitized by Google

ՇԱՐԱԿԱՆ ԴԳ

Այսօր ցնծան երկինք ի վերուստ մեծապայծառ: 1107:

Ձնէ Օրթի

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու: Ա. 39.

Տերամբ մերով Յիսուսիւ Քրիստոսիւ

Յարուցեալ Մարիամ յաւուրսն յայնոսիկ՝ գնաց ի լեռնակողմն փութապէս ի քաղաքն Յուդայ, և եմուտ ի տուն Զաքարիայ, և ետ ողջոյն Եղիսաբեթի: Եւ եղև իբրև լուաւ զողջոյնն Մարիամու Եղիսաբեթ, խաղաց մանուկն յորովայնի նորա: Եւ լցաւ Եղիսաբեթ Հոգւով սրբով, և ի ձայն բարձր աղաղակեաց և ասէ. օրհնեալ ես դու ի կանայս, և օրհնեալ է պտուղ որովայնի քո. և ուստի՞ է ինձ այս՝ զի եկեսցէ մայր Տեառն իմոյ առ իս: Զի ահաւասիկ իբրև եղև ձայն ողջունի քո յականջս իմ, խաղաց ցնծալով մանուկս յորովայնի իմում. և երանի որ հաւատայցէ՝ եթէ եղիցի կատարումն ասացելոցս նմա ի Տեառնէ: Եւ ասէ Մարիամ. Մեծացուսցէ անձն իմ զՏէր, և ցնծասցէ հոգի իմ յԱստուած փրկիչ իմ. զի հայեցաւ ի խոնարհութիւն աղախնոյ իւրոյ: Զի ահա յայսմհետէ երանեսցեն ինձ ամենայն ազգք. զի արար ինձ մեծամեծս Հզօրն, և սուրբ է անուն նորա, և ողորմութիւն նորա ազգաց յազգս երկիւղածաց իւրոց: Արար զօրութիւն բազկաւ իւրով, ցրուեաց զամբարտաւանս մտաց սրտից իւրեանց. քակեաց զհզօրս յաթոռոց, և բարձրացոյց զխոնարհս: Զքաղցեալս լցոյց բարութեամբ, և զմեծատունս արձակեաց ունայնս: Պաշտպանեաց Իսրայէլի ծառայի իւրում, յիշել զողորմութիւն, որպէս խօսեցաւ առ հարս մեր՝ Աբրահամու և զաւակի նորա յաւիտեան: Եկաց Մարիամ առ նմա իբրև ամիսս երիս, և դարձաւ ի տուն իւր: Եւ Եղիսաբեթի լցան ժամանակք ծնանելոյ, և ծնաւ որդի: Եւ լուան որ շուրջ զնովաւ էին՝ և ազգատոհմ նորա, զի մեծ արար Տէր զողորմութիւն իւր ընդ նմա, և խնդային ընդ նմա: Եւ եղև յաւուրն ութերորդի եկին թլփատել զմանուկն, և կոչէին զնա յանուն հօր իւրոյ Զաքարիա: Պատասխանի ետ մայր նորա և ասէ. ոչ, այլ կոչեսցի Յովհաննէս: Եւ ասեն ցնա. քանզի ոչ ոք է յազգի քում՝ որոյ կոչի անուն Յովհաննէս: Ակնարկէին հօրն նորա՝ թէ զի՞նչ կամիցի կոչել զնա: Եւ խնդրեաց տախտակ՝ գրեաց և ասէ. Յովհաննէս է անուն

դորա։ Եւ զարմացան ամենեքին։ Եւ բացաւ բերան նորա վաղվաղակի և լեզու նորա, և խօսէր և օրհնէր զԱստուած։ Եւ եղև ահ ի վերայ ամենեցուն որ լսէին զայս, և որ շուրջ բնակեալն էին զնոքօք, և ընդ ամենայն լեռնակողմն Հրէաստանի պատմէին ամենայն բանքս այսոքիկ։ Եւ եդին ամենեքեան որ լսէին ի սիրտս իւրեանց և ասեն. զի՞նչ լինիցի մանուկս այս։ Եւ ձեռն Տեառն էր ընդ նմա։ Եւ Զաքարիա հայր նորա լցաւ Հոգւով սրբով, մարգարէացաւ և ասէ. Օրհնեալ Տէր Աստուած Իսրայելի, զի յայց ել մեզ՝ և արար փրկութիւն ժողովրդեան իւրում։ Եւ յարոյց եղջիւր փրկութեան մեզ ի տանէ Դաւթի ծառայի իւրոյ, որպէս խօսեցաւ բերանով սրբոց՝ որ յաւիտենից մարգարէքն նորա էին։ Փրկութիւն ի թշնամեաց մերոց, և ի ձեռաց ամենայն ատելեաց մերոց. առնել ողորմութիւն ընդ հարս մեր, և յիշել զուխտն իւր սուրբ։ Զերդումն զոր երդուաւ Աբրահամու հօր մերում, տալ մեզ առանց երկիւղի, ի ձեռաց թշնամեաց փրկեալս, պաշտել զնա սրբութեամբ և արդարութեամբ առաջի նորա՝ զամենայն աւուրս կենաց մերոց։ Եւ դու մանուկ, մարգարէ Բարձրելոյ կոչեսջիր. զի երթիցես առաջի երեսաց Տեառն՝ պատրաստել զճանապարհս նորա։ Տալ գիտութիւն փրկութեան ժողովրդեան նորա, ի թողութիւն մեղաց նոցա։ Վասն գթութեանց ողորմութեան Աստուծոյ մերոյ, որովք այց արասցէ մեզ արեգակն ի բարձանց, երևել որոց ի խաւարի և ի ստուերս մահու նստէին, ուղղել զոտս մեր ի ճանապարհս խաղաղութեան։ Եւ մանուկն աճէր և զօրանայր Հոգւով, և էր յանապատս մինչև յօր երևելոյ նորա Իսրայելի։ 80։

ՇԱՐԱԿԱՆ, ԴԿ

Այսօր Բանն ի Հօրէ անմեկնելի և անճառելի։ 1144։

## ՋՆԻ Օրթի

### Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու։ Բ. 1։

### Վասն ծննդեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։

Եւ եղև ընդ աւուրսն ընդ այնոսիկ ել հրաման յՕգոստոս կայսերէ՝ աշխարհագիր առնել ընդ ամենայն տիեզերըս. այս առաջին աշխարհագիր եղև ի դատաւորութեան Ասորւոց Կիւրենեայ։ Եւ երթային ամենեքեան մտանել յաշխարհագիր յիւրաքանչիւր քաղաքի։ Ել և Յովսէփ ի

# ԱՒԱԳ ՏՕՆՔ

## վկայք ծննդեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի



# ԱՌԱՋԻՆ ՏՕՆ

## Ս. Դաւթի Մարգարէին եւ Յակոբայ Առաքելոյն, եղբօր Տեառն

Ի Նախընթաց երեկոյին նախատօնակ առնի՛ եթէ շինի Յայս կե-ւացին, և շղթայկեր շարականն է ըստ սոյն խոր ատրտին : Դ Ձ. Յաղ-թող զտաւ : Ի վայր : Զինի Մաղթանք Քրիստոս Աստուած մեր : Բար. Սուրբ ճգնաւորաքն : Աղ. Որ ընտրեցեր :

---

### Ի ԳԻՇԵՐԻ

#### ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԴՁ

Յաղթող զօրաւ յօրհնաբանս երանելին Դաւիթ. որ յօրանցաւ ի վերայ այլազգեաց եւ հաւատով պարտեաց զանօրէնն ըզԳողիաթ. զմարգարէն ‖ արասցուք բարե-խօս առ Տէր վասն անձանց մերոց : Ուսարուք զար-դարութիւն բնակիչք երկրի. նայեցարուք ընդ ար-դարըն Յակոբ. որ հաճոյ եղեւ Աստուծոյ փառօքն իւրովք. ընդ նմա արասցուք : Սա եղեւ գլուխ առաքելոց սրբոց. եւ կոչեցաւ եղբայր Տեառն ի տանէ Դաւթի. ընդ նմա արասցուք :

† Որ երջանիկ լուսովն զուարճանայր մարգարէն Դաւիթ. եւ Հոգւովն վերանայր ի կամարըս լուսե-ղէնս. ընդ նմա արասցուք : Որ հողանիւթ բնութեամբըն զուգակցեալ ընդ սուրբ Հոգւոյն. եւ ազատէր ըզթագա-ւորն ի դիւական ախտէն. ընդ նմա արասցուք :

Առ. Ամոլք հաւատոյ. այսօր փայլեն Հայր սուրբ ի քո սուրբ եկեղեցւոջ. մարդասէր Փրկիչ տօնողացս ողորմեա : Բարեխօսութեամբ Դաւթի եւ Յակոբայ քո

* Հբ. աշակերտաց. տես ի Զեկուցումն, էջ ԺԸ–ԺԹ:

սուրբ առաքելոցն. մարդասէր փրկիչ տօնողացս ո-
ղորմեա։ Լուսաւորեալք ի սոցա դպրութենէս. փա-
ռաւորեմք սուրբ զերրորդութիւնդ. երկրպագանչերոց
աղօթիւք տօնողացս ողորմեա։

ՀՐՇ. Որ ի հրեղէն զօրաց երկնից փառաբանեալդ Ա-
ստուած. որով զերկնային անմարմնական աստուածային
ըղձնորդս հեղեր յորդիս Ադամայ. աղաչանօք սոցա
ողորմեա մեզ Աստուած։ Երեւելով հողեղինացս ան-
հիւթականքն ի ձեւ մարմնոյ. որք եւ ծանուցին
մարգարէիցն ըղխորհուրդ քո գալստեանդ բազմապա-
տիկ տեսլեամբ օրինակելով. աղաչանօք։ Անճառելի
տնօրէնութեանդ քո աւետաբերք առաքեցան. Գաբ-
րիէլ եւ Միքայէլ անմարմնական դասուքն իւրեանց
յերկրի սպասաւորելով. աղաչանօք։

ՄՐԳ. Որ աւետաւոր քում գալստեանդ առաքեցեր
յաշխարհ ըզսուրբ մարգարէսն. եւ երկեալ խոնարհու-
թեամբ նոր օրինօք զԹերին լցեր ի գիրս օրինաց
եւ մարգարէից. բարեխօսութեամբ սոցա Քրիստոս
ողորմեա մեզ։ Որ կոչեցեր մարգարէիւք յառաջագոյն
ըղհեթանոսս քեզ նոր ժողովուրդ. եւ ըզդուստրն Սի-
ոնի զեկեղեցի հեթանոսաց հարսն երկնի անմա-
փեսային. բա։ Որ ըզփառս տաճարիս զոր շինեցեր
շինողդ էից ի վերայ վիմին. բարձրագոյն քան զա-
ռաջինն եւ գերազանցարդ վայելչութեամբ տեառնընդ-
ծանուցին ի մասունս հոգւոյն. բարե։

ՀԱՑՐ. Որ առաջեր ողորմութեամբ շինել պաշտօնի
ի սկզբանէ. ողորմելով որդւոց Արամայ եւ տուր յա-
գէն արշակունեաց հովիւ ընտրեալ զսուրբն Ներ-
սէս. աղօթիւք սորա ողորմեա մեզ Աստուած։ Որ է
ստուգանել թագաւորացն աստուածային քո օրինաց.

Digitized by Google

ըզպատուհաս բարկութեան մերոյ. յառաջնագոյն ժամանակօք յայտնեալ ցուցեր սըրբոյն Ներսեսի. աղօթիւք: Որ պատուականն արեամբըդ քո ազատեցեր զաշխարհս յանիծիցն. փրկեա ըզմեզ ի նեղչաց մերոց. եւ ազատեա յանօրինաց բարեխօսութեամբ սըրբոյն Ներսեսի. աղօթիւք:

Հգ. Որ ի վերայ բըղխեալ գաւազանին Յեսսեայ հանգեար եօթնարփեան շնորհօք. Հոգի Աստուծոյ եւ խորհըրդոյ. Հոգի հեզութեան և զօրութեան. Հոգի իմաստութեան և գիտութեան. Հոգի երկիւղի աստուածպաշտութեան. ‖ աղաչեմք շնորհեա և մեզ ողորմութեամբ ի քոց պարգեւացդ: Որ զգուշակեալըն քո Եսայեաւ ելից օծեալըն ի քէն մարմնով. ասէ Հոգի Տեառն ի վերայ իմ. զոր ի տնօրէնութեանըն խոնարհութեամբ ընթերցեալ որ վասն իւր զբան մարգարէին. աղաչեմք: Որ զառաքումն առ ի Հօրէ եւ ի Հոգւոյդ Բանին յաշխարհ. մարգարէիւքըն ծանուցեր զոր ի դիմաց մարդացելոյն բարբառէր առ մարդկութիւնս Տէր Տէր առաքեաց զիս եւ Հոգի նորա. աղաչեմք:

Հն. Քանզի զքեզ օրհնեն իշխանութիւնք երկնից Թագաւոր փառաց. ամենակալ ամենակարող թող ըզմեղս մեր ննջեցելոցն ‖ և հանգո ի խորանի քում ի յարքայականն ի հանգըստեան: Որ ի նախնումն ըզմարգարէն Մովսէս. լուսաւորեցեր աստուածային փառօք տեսլեամբ աստուածութեանըդ քո. լուսաւորեա եւ ըզմեր ըզննջեցեալսն և հանգո: Բարեխօսութեամբ սուրբ Աստուածածնի ծընողի և մօր քո. յիշեա զգինս արեան քո Տէր. եւ դասաւորեա յերանաւէտ յանթառամ և յանտըրտում ի կեանս. ի յարքայականն ի հանգըստեան:

ՄՄ. Թագաւոր փառաց Աստուած Հոգիդ կենդանարար. Ի շնորհաբաշխ աւուր մեծի ծննդեան Մարիամու գըտաներ Դաւթի Թագաւորին. Նորոգեաց զկենդանութիւն մերոյ Թագաւորի ''Ի''ն. զի օրհնեսցուք ըզքեզ Տէր այժմ և յաւիտեան: Աղբիւր կենաց և փրկութեան մերոյ Հոգի Հօր և Որդւոյ. Ի յարմարաւոյն ցեսեալ բըղխման զաւազանի հասեալ ժամանէ. շնորհազարդ պայծառացո զգաւազան իշխանութեան մերոյ հայրապետի ''Ի''ն. զի օրհնեսցուք ըզքեզ Տէր այժմ և յաւիտեան: Լուսոյ աշխարհի և ճառագայթ խնամոյ Հոգիդ սուրբ Աստուծոյ. Ի ցընծութեան աւուր ըզբո ուրախութեան Յովակիմայ և Աննային. աղօթիւք առացա լըցո զպէտըս կարեաց Հայաստանեայց եկեղեցւո ''Ի''ց. զի օրհնեսցուք ըզքեզ Տէր այժմ և յաւիտեան:

ԽՁ. Դաւանազան զօրութեան ըզխաչ քո երոյր Քրիստոս || և սովաւ յաղթեսցուք անօրէն թըշնամւոյն Սա է զէն յաղթութեան որեաւ արեամբ Որդւոյն Աստուծոյ. և: Սա է աթոռ տէրութեան. և ի սմա է բազմեալ Քրիստոս Որդին Աստուծոյ. և: Սա է նշան սըրբութեան և ի սմա է պատարագեալ Քրիստոս Որդին Աստուծոյ. և: — Փառք Հօր: Սա է կարապետ յաւուր գալըստեան Փրկչին. և ըզանկ պարծանաց հաւատացելոց. և սովաւ:

— Այժմ և միշտ: Որ հրաշագործեալ գըտաւ ի կոյրգըս Թագաւորաց. և մանանակից եղեւ սուրբ առաքելոցն. ըզնա արասցուք բարեխօս առ Տէր վասն անձանց մերոց:

---

Digitized by Google

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

### ՀԱՐՑ ԴՁ

Մեղաք յամենայնի. եւ ըզպատուիրանըս քո ոչ պահեցաք այլ խոստովանիմք առ քեզ. ‖ մի անտես առներ այլ գըթա ի մեզ Աստուած հարցըն մերոց։ Վասըն Դաւթի սիրելւոյ քո եւ Յակովբայ արդարոյ աղաչեմք ըզքեզ. մի։ Որ նըստիս ի քրովբէս եւ հայիս յանդընդս. յիշեա ողորմութեամբ քո զԴաւիթ. եւ աղօթիւք սըրբոյն Յակովբայ խընայեա ի մեզ Աստուած։

Գ. Ըզ Տէր ‖ օրհնեցէք բարձր արարէք ըզնա յաւիտեան։ Որ ընտրեաց զերանելին ըզԴաւիթ. յառաջնորդութիւն Իսրայելի օրհնեցէք։ Որ կացոյց ըզսքանչելին ըզՅակոբ. պարիսպ շըրջապատ եկեղեցւոյ իւրոյ օրհնեցէք։

### ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԴՁ

Թագաւոր փառաց Աստուած Հոգիդ կենդանա։ 983։

### ՈՂՈՐՄԵԱ ԴՁ

Անըսկիզբն Աստուած լոյս ի լուսոյ որ ծագեցար մեզ եղջիւր փըրկութեան ի տանէ Դաւթի. ‖ աղօթիւք սորա Աստուած ողորմեա մեզ։ Անմարմնոց վերնոց Թագաւոր յաւիտենից. որ մարմնով երեւեցար յերկրի ի զաւակէ Դաւթի. աղօթիւք։ Յառաջնումն աստուածահայր անուանեցաւ մարգարէն Դաւիթ. եւ ի վերջինս եղբայր Տեառըն կոչեցաւ ըսքանչելին Յակոբ. աղօթիւք։

### ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԴՁ

Երդուաւ Տէր Դաւթի ճըշմարտութեամբ եւ ոչ ստեաց նըմա. ի պըտղոյ որովայնէ նորա նըստուցանել ի յաթոռ նորա. օրհնեցէք ըզտէրութիւն նորա ամենայն



Digitized by Google

երկիր։ Ծագեաց մեզ Տէր զեղջիւր ի Դաւիթ. պատրաստեաց ըզճրագ օծելոյ իւրոյ. զովեցէք ըզգոհութիւն ‖ Նորա ամենայն երկիր։ Զցանկովք ընտրեաց իւր Տէր ժառանգել նովաւ ընդ նոր ժողովուրդ ըզհոգեւոր իսրայէլ. բարեբանեցէք զպատուամեծութիւն Նորա։

Առաւօտու երգ. Ոչ են բանք։ Քար. Աստուած մեծ։

ՄԱՆԿՈՒՆՔ ԵՒ ՀԱՄԲԱՐՁԻ ԴԶ

Օրհնեցէք ըզՏէր յօրհնութիւն ի Նոր. քանզի ծագեաց մեզ եղջիւր փրկութեան ի տանէ Դաւթի կեցուցանել ըզմեզ կամեցաւ. ‖ օրհնեցէք ըզՏէր յօրհնութիւն ի Նոր։ Գաւազան ծաղկեալ յարմատոյն Յեսսեայ. Դաւիթ մարգարէն. եւ ի Նորին շառաւիղէ առաքեալըն Յակոբոս ականատես եւ սպասաւոր Բանին Աստուծոյ. օրհնեցէք։ Եկեղեցիս օրհնեցէք ըզՏէր. որ երկրպագեմք ընտրելովք առաքելովըն Յակոբաւ եւ մարգարէիւըն Դաւթիւ համապատեաց զհիմունս սուրբ եկեղեցւոյ. օրհն։

Արեւագալ եւ խաղաղական չէ։

# ԵՐԿՐՈՐԴ ՏՕՆ

## Ս. Ստեփանոսի Նախավկային

Ի Նախընթաց երեկոյին Նախատօնակ ասիցէ, եւ շարականն չասի, կանոն ի լման ասա է որ ասէ. ԳԿ. Նահատակ բարի։ Ի ճաշ։ Ջնջի Մեղսն Քրիստոս Աստուած մեր։ Քարոզ Սուրբ ճգնաւորացն։ Աղօթք Որ ընտրեցեր։

ԻԳԻՇԵՐԻ

ՀԵՏԵՒԱԿ ՇԱՐԱԿԱՆ ԴԿ

Նահատակ բարի. Քրիստոսի եղեր այսօր է ի միջի մերում. եւ մտեր ի վերնատունն խորհրդոյ յաւիտենական։ Որ ընտրեցար ի դասս երկնաւոր զօրացըն պսակեցար ի Թագաւորէն զանթառամ ըզ-

պըսակն. եւ մըկըրտեցար արեամբըդ քո սըրբոյ. առաջին վըկայ Քրիստոսի սուրբ Ստեփանոս. Նախասարկաւագըդ մեծ։ Մարտիր ընդդէմ թըշնամւոյն այսօր եւ գնեցեր արեամբըդ քո զարքայութիւն. ի պարծանս ազգի մարդկան. ճըգնաւոր Քրիստոսի զօրութիւն երեքսըրբեանն որ ընկալաւ ըզվըկայդ իւր զսուրբ Ստեփանոս. ի վերին սիոնն Երուսաղէմ։

† Որ ընտրեցար ի կոչումն. առաքելական քարոզութեանցն արժանաւոր լինելով սուրբ Ստեփանոս. բարեխօսեա առ Քրիստոս վասն անձանց մերոց։ Որ խընդրեցեր զթողութիւն. ի վերայ քո քարաձիգ ժողովոյն սուրբ Ստեփանոս. եւ այժըմ վասըն քո ուխտաւորացս աղաչեա զընդ աջմէ հօր նըստեալըն։ Որ արժանի եղեր զմարտիրոսականն առնուլ պըսակ նախ ի վըկայս. առ պըսակիչըն սըրբոց եւ վասըն մեր բարեխօսեա։

Քաղ. Եւ ևս խաղաղ։ Քահ. Օրհնութիւն և փառք։ Աղօ

ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԴԿ

Առաքեալ և նախավըկայ Քրիստոսի սուրբ Ստեփանոս. որ ըզքարկոծումըն յանձն առեր. եւ յանմահին բնակարանսըն վերափոխեցար. Աղաչեա զԱստուած շնորհել մեզ ըզկեանս անվախճանս։ Տունկ անմահ իմանալի դրախտին շնորհեցար ի Հօրէ. եւ լուսաւորեցար անձառապէս. այսօր ցընծան դասք հրեշտակաց ընդ քո մեծապայծառ ճըգնութիւնդ. աղաչեա։ Աստուածատեսդ մարդոյն պըտուղ ընծայեցար մերձ յանմերձենալի լոյսն. եւ հայրենի աւանդութեանն եղեր ժառանգորդ. աղաչեա։ Ճանապարհ վըկայից յետ Քրիստոսի գըտար. եւ առաջնա-

ծայրին փառացն արժանաւոր եղեր . բանաւորքն զինու քո վիրաւորեցան եւ նախաստեղծըն պայծառացեալ բերկրեցան . աղաչեա զԱստուած շնորհել մեզ ըզկեանսն անվախճանս :

ՈՐՏ. Որ էին յէութեան Որդի միշտ յէէն . անեղանելի ծընունդ հայրական . զոր ի վերուստ հընչեցին որդիքն Որոտման եւ յայտնեցին որդւոց մարդկան . զծածկապէս խորհուրդ : Բանն անըսկիզբն ի կուսէն սկըզբնաւորեալ . ի յերկիր մարմնով երեւեցաւ . զոր տեսին քարոզք Բանին ճըշմարտութեան եւ ծանուցին տիեզերաց . Աստուած եւ մարդ : Իսկապէս Բանն Աստուած միացաւ ի մարմնի . անփոփոխ գոլով յէութեան . որում եղեն ականատեսս որդիքն Որոտման եւ ընդհանուր քարոզեցին . զԲանըն մարմին եղեալ :

ԱՌ. Իմաստութիւն երկնային բըղխեալ ի վերուստ . ժողովել զընտրեալսն ի սկըզբանէ զյիմարս աշխարհէ . Եւ լցեր լուսով քո իմաստութեան հալածել սաղաքս ըզխաւարն անգիտութեան ի մէնջ . Աղաչանօք սոցա խնայեա ի մեզ մարդասէր Փրկիչ : Ի ծովու նաւապարհորդեալ անհեղձ ընթացիք . ի ծովակէ կոչեցեր զորսորդս անբանից կենդանեաց ի մարդ . զի ի ծավէ աշխարհի որսայցեն ըզբանականս ի կեանս . աղաչանօք սոցա : Բանաւոր երկրի մըշակք երկնային . որ եսուր ըզսերմըն կենաց ի լեզուս Բանին մըշակաց . եւ առաքեցեր սերմանել յոգիս բանաւորաց . աղաչանօք :

ՄՐՏ. Երրորդութեանըն սիրով անձնիւք յաղթող վըկայիցն . արժանաւորք ընդունելոյ ի յաւազանաւորըն լուսոյ : Զի զանազգին մեղացն ըզբոց արեամբն իւրեանց

շիջուցին. եւ զտխեղերս հրաւիրեցին յօրհնաբանութիւն: Հեղմամբ արեանն իւրեանց մեզ ճանապարհ հարթեցին. եւ առ Քրիստոս մեզ դուռըն կենաց բացին ի յերկինս:

ՀԳ. Աղբիւր կենաց բաշխող շնորհաց հոգին իջեալ ի բարձանց. զանապական պարգեւըս քո բաժանեցեր յառաքելսն: Որ ի վերայ ջուրցըն գոլով ստեղծանէիր զարարածս. իջեալ ի ջուրս աւազանին ծնանիս որդիս Աստուծոյ: Որ զարդարեալ նորոգես միշտ ըզնոր քո զեկեղեցի. պէս պէս շնորհաց քոց պարգեւօք փայլեն մանկունքն սորա:

ՀՆ. Ես ասացի Տէր ողորմեա. հոգւոյ իմոյ բազմամեղի. որ բնակեալդ ես ի յերկինս եւ յանմարմնոց փառաբանիս. Այս մարդասիրեա բազմագութ Փրկիչ. եւ փարատեցո զցաւս անձին իմոյ: Պականեցայ յազգատոհմէ. լըքեալ թողի զկեանս աշխարհի. եւ մարմին ունայնութեան դարձաւ ի հող ուստի ստեղծաւ. յիս: Ցաւուր յայնմիկ մատնեցայ ի ձեռս ահեղ հրապարակին. եւ առ քեզ ապաւինիմ ստեղծող բնաւից Տէր բոլորից. յիս:

ԾՆ. Որ անտես և անքըննին քառակերպեցըն վեհագոյն. ի փըրկել ըզմեզ եկեալ անմահից թագաւորն. օրհնութիւն առաքողին: Առաքի հրեշտակապետն առ սերովբէն հողեղէն. ասէ Տէրն և արարողն առաքեալն ի Հօրէ մարմնանայ ի քէն փըրկողն: Մըկըրտի ի Յորդանան վըկայելով Հօր և Հոգւոյն. ովսաննայ ի բարձունս երգէին մանկունքն օրհնութիւն որդւոյ Դաւթի:

ԽՁ. Խաչի քո Քրիստոս երկըրպագեմ արարածք ամենայն. որ ի փըրկութիւն մեզ կանգնեցաւ. սա ե-

ղինցի մեզ պաշտպան յաղթող ‖ Աղերսացուցանել ըզմեզ ի պատրանաց Թշնամւոյն ։ Ի սմա բարձրացար բարձրեալ անիծից. որ փառաւորեալդ ես ընդ Հօր. ժողովել ըզհեռացեալսըն կենսաբեր փայտիւն. աղերսացանել ։ — Փառք Հօր ։ Սովաւ լուսաւորեցան արարածք ամենայն. սմա և սպասէին արգելեալքն ի մեղսասէր բանտին որ ազատեաց ըզմեզ ի պատրանաց Թշնամւոյն ։

— Այժմ և միշտ ։ Դասակարգեալք եւ մեք ընդ անմարմնական բազմութեանն վերահայցեմք ընդ հրեղէն լեզուացն աղօթանուէր մաղթանօք. հայցեմք քեն մարդասէր Փրկիչ. խնայեա ի մեզ ստեղծող մեր եւ կեանք աշխարհի ։

Թագաւոր ս մ ր ը յաւր տեածա։ ծծ ամ մն ։

Այսօր դասս մաք։ հրեշտակացն ուրախ։ ծխանամն ընդ ը ծնընդնութեամ։ ծծ մ ւն։ որըրըբախ։ ծոյն Ստեփանոսի նախավըկայ ս. յի ։ Քանզի ըզի զօչէ։ ... վ։ մ։ ծ եկեմ ղե։ ցի քո։ Քրի ծա։ ծծ ատոս ըզըյա ղթանանակ։ մա ծծ րտ հեղման արեան։ ստ մ մ։ մ։ ծ րա ի վե սմ։ րայ։ ըմ մե ծի։ անըւաճ։ ծմճ։ ն ըքո։ մ Տէր ։

Բազում համարձակութիւն է սորա առաջի Աստուծոյ ի ձեռըն հեղման սուրբ արեա ամ նն իւրոյ ։

Քանզի յօժարութեամբ մատնեաց զանձն իւր յարաչար եւ դառըն տանջանաց վասըն մեծի անուա ամ նըն Տեառն ։

Քանզի արհամարհելով անարգեաց զանցաւոր ըզկեանս աշխարհիս եւ փափագեաց յաւիտենականն կե-

նացն. եւ միշտ և հանապազ ուրախանայ ընդ Տեառն իւրոյ։ յանընդհատ յուրախութիւնս։

Քանզի գոչէ եկեղեցի քո։ Քրիստոս ըզյաղթանակ։ մարտ հեղման արեան։ սորա ի վերայ։ ըս մեծի։ անուան։ քո։ Տէր։

Փառք Հօրն էակցին Որդւոյն միածնի եւ ազատիչ սուրբ Հոգւոյն ը վայելէ։ Փառք պատիւ և իշխանութիւն այժմ եւ միշտ և յաւիտեանս յաւիտենից ամէն։

Եւ յորժամ շարժեցան երկինք և երկիր ի յահէ փառաց Բանին Տեառն Աստուծոյ։ Յայնժամ նըստուցանէ ընդ աջմէ իւրմէ ըզսիրելիս անուան իւրոյ ի լուսեղէն խորանսըն զուգաւորելով։

Այսօր դասք հրեշտակացն ուրախանան ընդ ծնութիւն սրբոյն Ստեփանոսի Նախավկային։ Քանզի գոչէ եկեղեցի քո Քրիստոս զյաղթանակ մարտ հեղման արեան սորա ի վերայ մեծի անուան քո Տէր։

---

## ՑԱՌԱՒՕՏՈՒ

### ՀԱՐՑ ԳՁ

Ընդ երկնային հոգեղինաց դասուցն. այսօր տօնեմք ըզյիշատակ սրբոյն Ստեփանոսի. բարեբանելով ըզքեզ Տէր ‖ Աստուած հարցըն մերոց։ Որ հրեշտակակերպ տեսլեամբ արիաբար պատերազմեալ. զքարկոծումըն յանձն էառ. խոստովանելով ըզքեզ Քրիստոս Աստուած։ Որ անպարագրելի աստուածութեանըդ տեսող եւ բարեխօս իւր ուխտաւորացս. այսօր յիշատակաւ սրբոյն Ստեփանոսի գովեմք ըզքեզ Քրիստոս Աստուած։

Գ. ԸզՏէր օրհնեցէք. եւ բարձր արարէք

ըզնա յաւիտեան։ Որ յերկնային զօրացըն մէջ տօ֊նի Քրիստոս Աստուած. այսօր յիշատակաւ սրբոյն Ստեփաննոսի. Ըզ Տէր օրհնե[illegible]ցէք. եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան։ Հրաշալի աստուածաբանութեամբ սրբոյն Ստեփաննոսի. քահանայք ընդ վերին զօրացն երկնից զՔրիստոս գովեն։

ՄՆԾԱՑՈՒՍՑԷ ԳԶ

Աստուածածին երկնային դուռն աստուածային. 379։

ՈՂՈՐՄԵԱ ԳԿ

Առաքեա ի մեզ Տէր ըզպարգեւ զբժշկութեան քո զո֊ղորմութիւն. բարեխօսութեամբ սրբոյ նախավկա֊յին քո և ողորմեա։ Որում զերկնային նըշն բացեր ըզդուռն. ցուցանելով զանճառելի խորհուրդ. Զսորին աղաչանօք խնայեա ի մեզ Տէր և ողորմեա։ Որ աղօթանուէր հայցմամբ ըզթողութիւն խնդրելով ի քէն. անօրէն ըսպանողաց իւրոց. սորին։

ՏԷՐ ՑՆՐԿՆԻՑ ԳԿ

Ով երջանիկ ճառագայթ. առաքելական քարոզու֊թեանցն արժանաւոր լինելով սուրբ Ստեփաննոս. հաւ֊տատութիւն ի Քրիստոսէ հայցեա սուրբ եկեղեցւոյ։ Որ քոյին յաժարական համբերութեամբդ ըզքարկոծու֊մըն յանձն առեր. շնորհեալ քեզ յԱստուծոյ լինել չարչարակից Քրիստոսի. զի եւ մեզ ուսուսցես փառա֊ւորել սուրբ զնորոգութիւնն։ Աղօթէիր. որ քարա֊ձիգըն լինէին ի քեզ նախ խդ ի վըկայս. զի առցես ըզհատուցումըն բարի յԱրարչէն ամենեցուն. եւ այժմ աղաչեմք ըզքեզ եւ վասըն մեր բարեխօսեա։

Առաւօտ. Եբր. Գործեցին սուրբքն։ Քոր. Աստուած մեծ։

ՄԱՆԿՈՒՆՔ ՆԻ ՀԱՄԲԱՐՁԻ ԴԿ

Նախասարկաւագ և առաջին մարտիրոս. որ ի Քրիս֊

տուսէ պըսակեցար. եւ յերկնաձեմ յառագաստին պայծառացեալ բերկրեցար. Աղաչեմ զԱստուած շնորհել մեզ ըզկեանս անվախճան։ Որ քոյին համբերութեամբ ըզդրունս երկնից բացեալ տեսեր եւ զՈրդի ընդ աջմէ Հօր. աղօթէիր ի վերայ քո քարաձգողացն. աղաչեմ։ Եկեղեցիք արդարոց եւ ժողովք ուղղափառաց. այսօր ըզյիշատակըս քո տօնեմք. եւ արտասուօք հայցեմք ի քէն ճըշմարիտ վըկայ Քրիստոսի. աղաչեմ։

Արեւագալն եւ խաղաղականն չէ։

---

ՃԱՇՈՒ

ԴԿ

Ցընծայ այսօր եկեղեցի Աստուծոյ. զքո վայելչապէս տօնէ զյիշատակս. Ով սուրբ Ստեփաննոս. մեծ եւ պատուական անուանիդ ի վըկայս. աղաչեմ զԱստըւած շնորհել մեզ ըզկեանս անվախճան։ Նախաշաւիղ բարեաց ամենայն աշխարհի. և լուսազարդ ճանապարհացն եղեր ժառանգորդ. Ով։ Աստուածային զինու վառեցար սուրբ Հոգւոյն տեսանելով յերկինս Հայրենի փառացն զՈրդին Աստուծոյ. Ով։

---

# ԵՐՐՈՐԴ ՏՕՆ

## Ս. Գլխաւոր Առաքելոցն Պետրոսի եւ Պօղոսի

Ի Նախընթաց Երեկոյին Նախատօնակ ասելի է. շնի Ցոյս կենացն, և ըզպատշաճ շարականն ի նմին տօնի, Խաղ. տաղերգն. ԴՁ. Ցնծայ այսօր ։ 887։ Ջնի Մաղթանք Քրիստոս Աստուած մեր։ Քար. Սուրբ ճգնաւորացն ։ Աղ. Որ ընտրեցեր։

---

Ի ԳԻՇԵՐԻ ՕՐՀ. ԴՁ. Ցնծայ այսօր։ Իւր տաղերգն։ 887։

---

Արեւագալն եւ խաղաղականն չէ։

---

Digitized by Google

# ՉՈՐՐՈՐԴ ՏՕՆ

## Ս. Որդւոցն Որոտման Յակոբայ Առաքելոյ եւ Յովհաննու Աւետարանչին

Ի Նախընթացին երեկոյին Նախատօնակ ասասցէք շնորհի Յայսմ կենացս, և զօրհնէքն է լման ասա, խաղ ասօրէն. Դ Կ. Որ էն յէութեան : Ի ժամ : Զնոյն Մեղմանէ Քրիստոս Աստուած : Քար. Սուրբ ճգնաւորացն : Աղ. Որ ընտրեցեր :

---

### Ի ԳԻՇԵՐԻ

### ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԴԿ

Որ էն յէութեան Որդի միշտ յէէն. անճառ զանճառելի ծընունդ հայրական. զոր ի վերուստ հընչեցին որդիքն Որոտման եւ յայտնեցին որդւոց մարդկան. զծածկեալսն խորհրդոյ : Բանն անըմբռնելին ի կուսէն սկըզբնաւորեալ. ի յերկրի մարմնով երեւեցաւ. զոր տեսին քարոզք Բանին ճշմարտութեան եւ ծանուցին տիեզերաց. Աստուած եւ մարդ : Ի սկզբանէ Բանն Աստուած միացաւ ի մարմնի. անփոփոխ փոխ զսոյն յէութեան. որում եղեն ականատես որդիքն Որոտման եւ ընդհանուր քարոզեցին. զԲանն մարմին եղեալ :

† Որ անմարմին ի Հօրէ մարմնացար ի կուսէն. թանձրացեալ Բանդ անըմբռնելի. զոր ի մարմնի չօշափեցին որդիքն Որոտման. եւ հնչեցին ընդ տիեզերս. զաւետիս կենաց : Որ զանտես յէից զլոյս անտանելի. պարագրեալ մարմնով ծածկեցեր. զոր ի լերին արտափայլեալ տեսին որդիքն Որոտման. եւ մաքրեցան անճառ տեսլեամբ. զեռապանծ լուսոյն :

ՄՏ. Առաքելոյ և Նախավկային Քրիստոսի սուրբ Ստեփանոս. որ ըզքարկոծումն յանձն առեր. եւ յան-

ճաշէից բնակարանսըն վերափոխեցար. Աղաչեմ զԱստուած շնորհել մեզ ըզկեանս անվախճանս։ Տօնակ անմահ իմանալի դրախտին շնորհեցար ի Հօրէ. եւ լուսաւորեցար անճառապէս. այսօր ցընծան դասք հրեշտակաց ընդ քո մեծապայծառ ճըգնութիւնդ. աղաչեմ։ Աստուածամատեղծ մարդոյն պըտուղ ընծայեցար մերձ յանմերձանալի լոյսն. եւ հայրենի հաւանդութեանն եղեր ժառանգորդ. աղաչեմ։ Ճանապարհ վըկայից յետ Քրիստոսի գըտար. եւ աստուածային փառացն արժանաւոր եղեր. բանսարկուն զինու քո վիրաւորեցաւ. եւ նախատեղծըն պայծառացեալ բերկրեցաւ. աղաչեմ։ Դասակարգեալք եւ մեք ընդ անմարմնական բազմութեանն վերահայցեմք ընդ հրեղէն լեզուացն աղօթանուէր մաղթանօք. հայցեմք ի քէն մարդասէր Փրկիչ. խնայեա ի մեզ ստեղծող մեր եւ կեանք աշխարհի։

Առ· Որ զօրինակ երկոտասանն առաքելոց քոց Քրիստոս. եւ զեօթանասունն ընտրելոց աշակերտացն. յառաջագոյն ծանուցեր ի թիւ արմաւենեաց եւ աղբերացն Յաղիմայ. Աղաչանօք սոցա խնայեա ի մեզ մարդասէր Փրկիչ։ Որ ծնեցեր ըզտուն քո զեկեղեցի. իմաստութիւն Հօր Յիսուս. եւ կանգնեցեր ի նմա սիւնս զեօթնարփեան Հոգւոյն զօրութիւն. եւ առաքեցեր ըզծառայս քո սուրբ զառաքեալսն. կոչել զհեթանոսս յարքունիս ուրախութեան խառնեցելոյ բաժակին. աղաչանօք։ Որ տէրականդ իշխանութեան հաղորդս արարեր ըզսուրբ զառաքեալսն. կապել եւ արձակել զորդիս մարդկան յերկինս եւ յերկրի. եւ աթոռակիցս լինել քեզ խոստացար յորժամ նըստիս յաթոռ դատողական. աղաչանօք։

Digitized by Google

ՀՐՇ. Այսօր ուրախացեալ սուրբ եկեղեցի Քրիստոսի. տօնէ խնդութեամբ զտօն վերինն Երուսաղէմի. Սրբասաց ձայնիւ փառաւորելով զՔրիստոս: Այսօր համաձայնեալ որդիք Սիոնի երկրայնոյ. տօնիւ զուարճանան որդւոց անդրանկաց վերին Սիոնի. սրբասաց: Այսօր դասք անմարմնոցն երգս նուագել պարեն ընդ մարդկան. զերգս հոգեւորս յանձանց փեսային յառագաստ. սրբասաց:

ՑՈՎ. Այսօր ցնծայ եկեղեցի ի հոգեւոր հարսանեաց զոր պատրաստեաց ձայն բարբառոյ հայրըն միածին փեսային: Այսօր փեսաւէրն և բարեկամ նորա ընդ երկնաւոր փեսայիւն. միաւորեաց զեկեղեցի փոխադրելով ի յերկինս: Այսօր շնորհեցաւ մեզ դեղ կենաց նշխարք սորին ոսկերաց. ի ձեռըն սուրբ Լուսաւորչին Հայաստանեայց աշխարհի:

ՀԳ. Հոգիք հրեղինացն. այսօր տօնեն ընդ մեզ ըզգալուստ Հոգւոյն Աստուծոյ: Տեառնողն յառաջ. նըշանակէր զառատաբուղխ վտակ իմաստից ի մեզ հեղեալ ի Հոգւոյն: Վէմըն հաւատոյ. զմայլեալ աշխարհական բաժակաւն. այսօր բաշխէր ծարաւելոց: Գետոցս այս գնացիւք. ցնծայ քաղաքն Աստուծոյ Սիոն մայր եկեղեցի: Վասն որոյ և մեք. երրեակ և մի աստուածութեանն երգեմք ըզփառս ի բարձունս:

ՀՆ. Հայեցայ ի բարձունս առ քեզ կարօղ յամենայնի. ընկալ զիս յարկս արդարոց ամբարձածովեալ աղաւնեւ քո. Յիս մարդասիրեաւ բազմագութ փրկիչ. եւ փարատեցո զցաւս անձին իմոյ: Ահա ի խաղաղութենէ. դարձայ ի հող յորմէ ստեղծայ. Նորոգող ճարտարապետ պարգեւատու ողորմութեան. յիս: Այլ կենդանիքս օրհնեմք ըզքեզ Քրիստոս թագաւոր յաւիտենից. որ փառօք փառաւորիս ի յերկնայնոց և յերկրայնոց. յիս:

ՄԾ. Խիւծեալ բամբից դասուց սրբոց զըղձումն եղբօրըն վըճարեալ. բացեալ զտապանն ամենօրհնեալ եւ զբաղձալին իւր ոչ գտեալ. քանզի եղեւ վերափոխեալ ի փառս անճառ նախ պատրաստեալ: Փառըք Հօրն էականի պատիւ Որդւոյն իւր էակցի. ընդ Հոգւոյն համագուզի որ զարդարեաց զկոյսն ի յերկրի. ժառանգել լանճառ բարին զոր պատրաստեաց լիւր Միածինն: Քանզի անճառ է խորհուրդ փառաց կուսին յանմարմնոց. զոր ի դարուցըս վերջնոց եհեղ մարդկան ստորայնոց. զոր այժմ յուսով բերկրելոց յայնժամ շնորհէ յուսացելոց:

ԽԶ. Որ յանըսկիզբն էէն անսերմնապէս ծընեալ. եւ սրովբէականըն ծածկէիր թեւօք. այսօր ըզպարագրեալն մարմնով ցուցեր զաստուածութեան քո զփառս աշակերտաց քոց Տէր. ‖ քո ամենապայծառ ծագմամբդ ողորմեա մեզ Աստուած: Որ ըզստուերական օրէնս մովսիսական տառիցն. ի սինէական խօսէիր լերին. այսօր ըղՄովսէս և զՀեղիաս ածեալ ի մեռելոց եւ կենդանեաց ի տեսիլ փառաց քոց. քո: — Փառք Հօր: Որ զօրինակ մեծի գալըստեան քո Տէր. ի Թաբորականըն ծանուցեր լերին. քանզի տեսին դարք առաջելոցն ըզնախահարսն եկեալ փառօք խօսէին զելիցն յԵրուսաղէմ զխորհուրդ. քո:

— Այժմ և միշտ: Որ կենարար բանիւ քո աննմանացեալք. եւ մահու եղեն գերագոյնց. յանձն առին ըմպել զբաժակ չարչարանաց ընդ քեզ զի ընկալցին ի քէն ըզփառս. անվախճան կենացն:

---

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԴԿ

Որ զամենայնըն յօչընչէ արարեր և ըստեղծեր ըզ-

մարդն ի յանմահութիւն. և պատկեր աստուածութեանըդ քո ‖ ըղքեզ օրհնեմք Աստուած հարցըն մերոց: Որ զանկեալն ի մահ պատրանօք բանսարկուին. կենդանեցեր ի փառս առաջին զանլըստեամբըդ քո յաշխարհ ըղքեզ: Որ կոչեցեր ըղտիեզերս ի հաւատըս երրորրդութեան. ընտրելովք քո առաքելովք և ցուցեր աւետարանիչ զորդիսն Որոտման ըղքեզ:

Գ. Ըզտէր ‖ օրհնեցէք ևն. Ի բարձր աթոռէք ընդ յաւիտեանն: Որ ըստ կամաւոր յօժարութեանն իւրեանց զորոգոյց սուրբ զառաքելոյն. և հրեղինոյ յերկնից արքայութիւնն օրհնեցէք: Որ ընկալաւ ի կեանս անապականս զերջանիկ սուրբ զառաքեալն. և դասեցոյց ի խորանըս լուսեղէնս օրհնեցէք:

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԴԿ

Աստուածածին ամպ լուսաւոր. որ զցօղն կենաց. 96:

ՈՂՈՐՄԵԱ ԴԿ

Որդիքն Որոտման որք ի վերուստ հընչեցին ըԲանըդ կենաց ծագեալ ի Հօրէ. և ըղտիեզերս հըւիրեցին յօրհնաբանութիւն սուրբ Երրորդութեանդ. ‖ բարեխօսութեամբ սոցա ողորմեա մեզ Որդի Աստուածոյ: Բանըդ մարմնացար ի կուսէն քարոզքըն աւեաւետարանեցին յաշխարհի զգալուստ Միածնիդ. բարեխօսութեամբ: Զչարչարանս և ըղմահ ընդ քո յանձն առին. հաղորդիլ փառաց քոց Տէր ի քում գալըստեանն. բարեխօսութեամբ:

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԴԿ

Հոգի իմ կանխէ առ քեզ Աստուած. որ ծագեցեր ըղլոյս հրամանի քո յաշխարհս. ընտրելովք քո առաքելովք ‖ վասըն սոցա կեցո ըղմեզ: Լըցեալք շնորհօք Հոգւոյդ սըրբոյ. և բարձրացեալք ի վերայ խորանաց

երկնից · տեղեկացեալ եղեն անճառ էութեան Միա- ծնի քո · աւետարանեցին յաշխարհի · փառըն ։ Կարողք եղեն ամենայն զօրութեամբ · ընդունել ըզբաժակ չար- չարանաց Միածնի քո · որդիքն Որոտման եւ ընդ աջ- մէ գահին · փառըն ։

ՄԱՆԿՈՒՆՔ ԵՒ ՀԱՄԲԱՐՁԻ ԴԿ· ՄՏ·

Ո՞ր յանըստուեր ի լուսոյն ընկալար ըզծագումըն շնորհաց · ով երանելի տէր Յովհաննէս · եւ հրաշա- զարդ զըստր յերջանիկ դասս առաքելոցն · հայ- ցեալ ի Տեառնէ զթողութիւն յանցանաց ։ Ո՞ր փա- րեցար ըզպարապահելի պարանոցաւն զանմատոյց ը լու- սոյն · եւ մաքրեցար որպէս զոսկի ի հուր · լուսա- զարդեալ երեւեցար ի մէջ սրբոցն որպէս յաստեղս արեգակն · հայցեալ ։ Ո՞ր ի կենդանի աղբերէն ար- բեր ըզբըղխումըն շնորհաց · եւ ի թեւս Հոգւոյն համ- սեր յանհիմանալին · աւետարանեցեր մըշտընջենա- ւորակից Հօր զէակից Որդին · հայցեալ ։

---

Արեւելեան եւ խաղաղական չէ ։

---

# ՉՈՐԵՔՇԱԲԱԹԻ

Թէ հանդիպի յայս փոխերգս մեծ, [illegible] [illegible]

ՀԱՐՑ ԴԿ

Աստուած հարցըն մերոց բարեբանեալ ես · ի յաւիտեան ։ Զի արդար ես յամենայնի Տէր կեցո զմեզ ։ Առաւել փառաւորեալ Տէր ։

Գ· ԸզՏէր օրհնեցէք եւ բարձր արարէք զնա յաւիտեան ։ Տիւք և գիշերք ըզՏէր օրհնեցէք եւ առաւել բարձր ։ Իսրայէլ ըզՏէր · օրհնեսցէ զԱստուած · Տէր և արարիչ ամենայնի · ամենայն գործք օրհնե- ցէք · եւ բարձրացուցէք ըզնա յաւիտեան ։

Digitized by Google

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԴԿ

Ի քեզ եմք ապաւինեալ Քրիստոսի մայր Աստու։ 102։

ՈՂՈՐՄԵԱ ԴԿ

Մեղայ քեզ Տէր քաւեա զիս. եւ ողորմեա ինձ Աստուած։ Ոչխար եմ բանաւոր հօտի քո եւ առ քեզ ապաւինիմ հովիւ բարի. խնդրեա զիս ըզմոլորեալս. եւ ող։ Ի ծովու մեղաց ալէկոծեալ եմ եւ առ քեզ ապաւինիմ նաւապետ բարի. փրկեա զիս ի վըտանգէս. եւ ող։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԴԿ

Օրհնեմք ըզքեզ մարդասէր Տէր. խոնարհեալ յարարածըս քո։ Հօրդ երկնաւորի եւ մարդասիրի. օրհնութիւն և փառըս մատուցանեմք։ Զի առ քեզ Տէր Տէր են աչք մեր. ի քեզ յուսացաք պահեա եւ կեցո ըզմեզ։

---

# ՈՒՐԲԱԹ

Թէ հանդիպի ՀԱՐՑ հանգստեան

---

# Է. ԿԻՒՐԱԿԷ

Թէ հանդիպի

ՀԱՐՑ ԳԿ. Այսօր զենաւ մեզ պասքա։ Իւր տաղերն։ 677.

---

# ՏՕՆ

# ՏՆՕՐԷՆՈՒԹԵԱՆ ԵՒ ԱՆՈՒԱՆ

## ՏԵԱՌՆ ՄԵՐՈՅ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ

*Ի Յունուարի 1*

ԻԳԻՇԵՐԻ

ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԳՁ

Անսկզբնական տեսիլ փառաց քոց։ Իւր տաղերն։

ԶՅայտնութեան վեցերորդ աւուր շարականն ասա։ Իսկ [illegible] յորդորակ շարական ասէն։

Ալէ՛լուիա. ալէ՛լուիա. ալէ՛լուիա.

Եղիցի՛ անուն Տեառն օրհնեա՛լ. զի յառաջ քան զարեւ է անո՜ւն նորա:

Ի նա՛ օրհնեսցի՛ն ամենայն ազգք երկրի՛. և ամենայն ազինք երանեսցե՜ն նըմա:

Ալէ՛լուիա. ալէ՛լուիա. ալէ՛լուիա՞

Փ. Օրհնեցէ՛ք մանկունք ըզՏէր. և օրհնեցէք զա՜նուն Տեառն:

Եղիցի՛ անուն Տեառն օրհնեալ յայսըմհետէ մինչև յա՜ւիտեան:

Փա՛ռք և: Ա՛յժմ և: Ալէ՛լուիա:

Ա—ծ—ի Երգ. Իջէ որպէս զանձրև: Աստուած գիրա:
Գ—ր—ղ Մայր սուրբ:

Ձ—նի ՍԱՂՄՈՍ ՃԺԲ. Յ—յնէ—

Կ8. Եղիցի անուն Տեառն: Փխ. Օրհնեցէք ման: 508:

Ալէլուիա. Օրթի

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի: Ա. 18:

Տեառն մերոյ

Յիսուսի Քրիստոսի ծնունդն էր այսպէս: Խօսեալ: 1102:
Արարչական: Գ—ր. Խնդր: Կեցո. Յ—յնէ—: Աղ. Քում ամ:

---

ՅԵՐԵԿՈՅԻՆ

ՄԵՍԵԴԻ Իջէ որպէս զանձրև: Աստուած զիրաւունս:
Գ—ր—ղ Մայր սուրբ:
ՀԱՄԲԱՐՁԻ ԳՁ. Անսկզբնական: Վ—էջ տ—ն 1168:
Ձ—նի Գ—ր. Սուրբ զԱստ: Կեցո: Յ—յնէ—: Աղ. Ընկալ:

---

ՊԱՀՔ

ՅԱՅՏՆՈՒԹԵԱՆ ՏԵԱՌՆ ՄԵՐՈՅ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ

---

Ա. ՕՐ ՊԱՀՈՑ

ՅԱՌԱՒՕՏՈՒ ՀԱՐՑ ԱՁ. Երգէին մանկունքն ի: 869:

---



Digitized by Google

ւղ ։ Որ աստուածատունկ իմանալի ծառոյն կենաց ող-
կոյզն ի քէն պըտղաբերեցաւ . որով կերակրեցեր
եւ կերակրես միշտ ըզմանկունս եկեղեցւոյ . արքա-
յութեանն երկնից դըպիր եւ վարդապետ հին եւ նոր
տակարանաց . ղ ։ Եկայք լուսաւորեալ մանկունք
աւազանի աշակերտեալք սովաւ բանին ճըշմարտու-
թեան . ցընծութեամբ կատարեսցուք . ըզյիշատակ վար-
դապետին եկեղեցւոյ . որ զընթացս իւր կատարեալ
այսօր վերափոխեցաւ յաստուածակերտ խորանս ի յան-
րանկաց հոգւոցըն դասս . վասըն մեր առ Տէր
միշտ բարեխօսել առ ըզքաւութիւն յանցանաց ։

ԳՐԻ. Այսօր տօնէ եկեղեցի ուրախութեամբ ըզյի-
շատակ սուրբ հօրն Գրիգորի . որով լուսաւորեալ պայծա-
ռացաւ վայելչապէս . ի հանդերձս յոսկեհուռս զար-
դարեալ եւ պըսակեալ . Օրհնեցէք մանկունք զՔրիս-
տոս թագաւորն ։ Այսօր ցընծան նորածնեալ որդիք
լուսոյ յիշատակաւ սուրբ Լուսաւորչին . որով հրաւի-
րեցան ի հարսանիսն անապականս . մըտանել ընդ
փեսային երկնաւորի ի յառագաստըն լուսեղէն . օրհ ։
Այսօր քահանայք հոգեւոր պատարագին ըսպասաւորք
վերապատուեն ըզքահանայապետըն սուրբ . որով եր-
կնայնոց քահանայութեանցըն հաղորդեալք . յոր վե-
րափոխեալ այսօր մըտանէ ի սրբութիւն սրբոց միշտ
բարեխօսել առ Տէր վասըն մեր . օրհ ։

ՆԵՐ. Այսօր զուարճացեալ տօնեն երկնայինքն
ընդ մարդկան . պարակից եղեալ փըրկութեան մերոյ .
քանզի յայտնեցաւ մեզ հոգեւոր գանձըն լուսոյ . ա-
րեւելեան արեգականըն ճառագայթ սուրբըն Ներսէս .
բարեխօսութեամբ սորա Տէր պարգեւեա զխաղա-
ղութիւն հայաստանեայց աշխարհի ։ Այսօր վերըստին

Նորոգեցաւ քահանայական գաւազանն. գեղեցկագէ-
ծաղկեալ պայծառութեամբ. քանզի շնորհեցաւ հով-
ւըն քաջ բանաւոր հօտի. յարմարաւոր Լուսաւորչին բը-
նոյ բուսեալ սուրբըն Ներսէս. բարեխօսութեամբ ս-
րա Տէր ողորմեա հաստատեա զիշխանութիւն հայրապետա-
կան աթոռոյ։ Այսօր մեծապէս փառօք ցընծայ թա-
գաւորական գաւազանն. ընդ հաշտութեան սր-
սուրբ հայրապետին. քանզի եհաս ի յօգնութիւն օ-
րինադրողըն թագաւորաց. մարտակից զինուորա-
դասուն սուրբըն Ներսէս. բարեխօսութեամբ սոր
Տէր ողորմեա բարձրացո զիշխանութիւն թագաւորական
աթոռոյ։

ՄՏԲ. Հայրապետ սուրբ եւ անբիծ և ընտրեալ յ-
րովայնէ. սքանչելագործ վիճակով եւ պարծանք ազգի
մարդկան. Սա Քրիստոս բարեխօսեա վասըն մեր
տօնողացս։ Հովիւ հոգևոր բանաւոր հօտի. լուսա-
ւորիչ տիեզերաց սիւն լուսոյ կանգնեալ ի մէջ եկեղեցւ-
ոյ։ Հաստատութիւն հաւատոյ պըսակ ի գլուխ եկե-
ղեցւոյ. պայծառ քարոզ տիեզերաց և պարծանք ազգի
մարդկան. Սա։ Ի տաճարի քում սրբութեան երկր-
պագեմք քո նըշխարաց. փառաւորեմք զօր յիշատակի
կատարման քո հանգըստեան. Սա։

ՈՍԿ. Որք արժանաւորեցայք կոչել յաշակերտու-
թիւն առաքելոյն Թադէոսի. եւ աստուածային հրա-
մաքրութեան ոսկի փորձեալ գըտայք ի բնակարանս
հրեշտակաց. Ով երանելի սուրբ Ոսկեանք բա-
րեխօսեցէք առ Տէր մաքրել ըզմեզ ի մեղաց մե-
րոց։ Որք անհրաժեշտ դաւանութեամբ քարոզեցէք
ըզՔրիստոս ի դրունս թագաւորին. մըկըրտեցէք
ըզքաջ նահատակսն. ի յակունս Եփրատայ ի ծաղկե-

զարդ վայելչութեանն. ով: Որք անպարտելի մնա-
ցէք ի հրապուրանաց որդւոյ թագաւորին. չարչարեա-
լք վասն Քրիստոսի. արագապէս խողխողեցայք պա-
տարագ ընդունելի. ով:

Հգ. Արեգակն արդարութեան Քրիստոս ծագեալ յաշ-
խարհս հալածեաց զխաւարն անգիտութեան. եւ
յետ մահուն եւ յարութեան համբարձաւ առ Հայր յոր-
մէ ծագեաց. որ երկրպագի յերկնաւորաց եւ յերկրա-
ւորաց ընդ Հօր եւ սուրբ Հոգւոյն. ‖ վասն որոյ և
մեսաք երկրպագանեմք Հօր Հոգւով եւ ճշմար-
տութեամբ: Որ փոխանակ ծոցածին Բանին որ եկն
յերկինս. առաքեցաւ աւետիքն Հօր ի բարձանց Հո-
գին ճշմարտութեան. մխիթարել զորս յԱդամայ տրտ-
մեցելոց եւ հրագինել զընտրեալ դասս առաքելոցն.
վասն: Այսօր տրտմական և գիշերային լուծան եր-
կունք ծննդեան նախամօրն. քանզի զծնեալսն մար-
մնով ի մահ եւ յապականութիւն. վերստին ծնանի
Հոգին յորդիս լուսոյ Հօրն երկնաւորի. վասն:

Հն. Արարչագործ Աստուած. որ յոչընչէ գոյացու-
ցեր զերկինս եւ զերկիր. օրհնեմք զքեզ. որ
հանգուցիչդ ես ննջեցելոց Հայր ամենակալ: Բանդ
Աստուած և համագոյ փառաց Հօր պատկեր. գովեմք
զքեզ որ յարութիւնդ ես ննջեցելոց Որդիդ միա-
ծին: Աղբիւր անսպառ յորմէ բաշխի տիեզերական
շնորհք. բարեբանեմք զքեզ. որ նորոգողդ ես
ննջեցելոց Հոգիդ ճշմարիտ:

Մծ. Սուրբ զԱստուածածինն. օրհնութեամբ մեծա-
ցուցանեմք: Աւետաւոր հրեշտակն աւետարանէր. ըզ-
ծնեալն Փրկիչն ի սրբոյ կուսէն: Աւէ ուրախ լեր
բերկրեալդ. քանզի Տէր տերանց է ընդ քեզ:

Digitized by Google

ԽՁ. Այսօր ուրախացեալ ցընծան երկնից բազ-մութիւնքն. ի նաւակատիս սուրբ եկեղեցւոյ. քան-զի շնորհեցաւ մեզ քահանայապետ յաւիտենից. ի լուսաւորել զկաթուղիկէ սուրբ զեկեղեցի. || Փառա-ւորք զանլըռատեան քո Տէր: Այսօր ոգին լուսոյ հովա-նի եղեւ ընդ մեզ ի բարձանց. քանզի Թագաւորն եր-կնաւոր եկաւորէ ի սուրբ եկեղեցի. եւ զօրք հրեշտակաց ծառայելով տօնեն ընդ մարդկան. Փա:

— Փառք Հօր: Այսօր քահանայապետն ճըշմարիտ աս-տուածային օրհնութեամբ պատուեալ. կանգնէ ըզքա-ռանկին սեղան խաչին. արժանաւորս պատարագել բաշխէ զմարմին եւ զարիւնն Տեառն. մաքրեալք մերձեցարուք փըրկեալքս Նորին ժողովուրդք. եւ հայ-ցեցէք ի Քրիստոսէ զի շնորհեսցէ ըզգամ մեզ ընդ եր-կայն աւուրս:

— Այժմ եւ միշտ: Գոհութեամբ փառաւորեսցուք ըզ-քեզ Քրիստոս փառաց Թագաւոր. որ ընտրեցեր աս-տուածային քո օրինաց քահանայ ըզսուրբն Ներսէս. որ զհաւատացեալ արծաթ բանին ի քէն առեալ ի սեղանա-ւորս յոգիս որդւոց մարդկան. մաղթանօք սորա ար-ժանաւորեա ըզմեզ փառաւորել սուրբ զԵրրորդութիւնդ յաւիտեանս ամէն:

ՅԱՌԱՒՕՏՈՒ ՀԱՐՑ ԴՁ. Սքանչելագործ Աստ: 874

ՄԱՆԿՈՒՆՔ ՆԻ ՀԱՄԲԱՐՁԻ ԴԿ. ՄՏ.

Լուսապայծառ իմաստիւք. լոյս եղելոց աշխար-հի համաձայնող գոլով. լուսաւորեալ զեկեղեցի աստուածային բանիւ || Երանելին Բարսեղ. մաղ-թանօք սորա խընդրեսցուք զթողութիւն մեղաց: Քրիստոսազօր զինուորաց. համախմբող ի հոգեւոր պատերազմին. սիւն Հաւատոյ հաստա-

տուութեան եւ առաջնորդ մարդկան ի կեանս երանելին։ Որ ըստ անմարմնոց ի մարմնի. քաղաքավարեալ մաքրութեամբ ի մանկութենէ. այսօր վերափոխեալ ի յերկնային խորանս երանելին։

## Ը. ԿԻՐԱԿԷ

Որ է Յայտնութեան պահոց հանդիպի

ՀԱՐՑ ԴԶ. Միածին Որդի Աստուծոյ։ Իւր տեղւոջն։ 701։

## ՃՐԱԳԱԼՈՅՑ
## ՅԱՅՏՆՈՒԹԵԱՆ
### ՏԵԱՌՆ ՄԵՐՈՅ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ

Աստուածայայտնութեան կարգն նոյն է ընդ Ճրագալուցի Ծննդեան Տեառն։ 1094։

### ՅԵՐԵԿՈՅԻՆ

ՄԵՍԵԴԻ Ծննդեան. Տէր ասաց։ Ընդէր խռովեցան։
Քարոզ Աղաչեսցուք։
ՀԱՄԲԱՐՁԻ ԴԿ. Խորհուրդ մեծ։ Տաղն տօն։ 1107։
Զկնի Քարոզ վասն խաղաղութեան։ Աղօթք Հայր գթած։
Եւ ապա Նախատօնակ առնեն, և ասեն զՀԱՐՑՆ ԳԶ. Անըսկիզբն։ Իւր տեղւոջն։ 1110։
Զկնի Քար. Սուրբ զԱստուած։ Կեցո. յայնժամ։ Աղ. Ընկալ Տէր։

## ՅԱՅՏՆՈՒԹԻՒՆ
### ՏԵԱՌՆ ՄԵՐՈՅ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ

### Ի ԳԻՇԵՐԻ

ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԴԿ

Խորհուրդ մեծ և սքանչելի որ յայսմ աւուր։ 1107։
Ալէլուիա Ծննդեան է յայնէն։

### ՅԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԳԶ

Անսկիզբն էակից Բանդ Հօր որ էիր։ Իւր տեղւոջն։ 1110։
Զկնի Տէր յերկնիցն ընթեռնուն է բեմն աւետարան ԴԿ. Բ. Յ. Եւ Հովիւքն։ Որպէս է Ծննդեան։ 1111–1112։

Digitized by Google

Առաւօտու երգ. Իջցէ որպէս զանձրեւ: Աստուած գիրաւս:
Քարոզ Մայր սուրբ:

Ձայնի Սուրբ Աստուածն Մող. Փրկել: Քարոզ Վասն լսելի. Քահ. Օրհնութիւն և փառք: Եւ այլն

### ՍԱՂՄՈՍ ՃԹ. Յայնժ

ԿՑ. Ի վայելչութիւն սրբ: Փխ. Ասաց Տէր ցՏէր: 1149:

### Ձայնի Ալէլուիա, Օրթի

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի: Ա. 1:

Գիրք ծննդեան Յիսուսի Քրիստոսի որդւոյ Դաւ: 996:

Յետ աւետարանին լինի կնքակցի է, շնորհաստեղծեալն առ. Երկեայ, ... , զԱրարչականն ...: Ձայնի Մած-կեալ խորհուրդն ծանուցաւ:

Ձայնի Քար. Խնդր: Կեցո. Յայնժ: Աղ. Քաւմ ամենազօր:

---

### ՑԵՐԵԿՈՑԻՆ

Ես առ Աստուած կարդացի: Խոնարհեցո և Ապրեցո: ՄԵՍԵԴԻ Մնացեալն. Իջցէ որպէս: Աստուած գիրաւ: Քարոզ Մայր սուրբ:

### ՀԱՄԲԱՐՁԻ ԴԿ

Այսօր բանն ի Հօրէ անմեկնելի: Եօթն տուն: Ի վերջ: Քար. Սուրբ զԱստ: Կեցո. Յայնժ: Աղ. Ընկալ Տէր:

---

# Բ. ՕՐ ՅԱՅՏՆՈՒԹԵԱՆ

## Ի ԳԻՇԵՐԻ

### ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԴԿ

Այսօր Բանն ի Հօրէ անմեկնելի և անճառելի խորհրդով. ի ձեռն ...ըն կուսական որովայնին անսե-րմնաբար յերկիր երեւեալ: Մանուկ անժամանակ ի Հօրէ անսերմն ի կուսէ. ի գիրկս մօր դրդուեցաւ այսօր արարիչն երկնի և երկրի: Որ մարգարէիւցն ըդ-Յորդանանն և լուաց ըզմեղս աշխարհի. զոր օրհ-

նեցն անդադար արարածք ամենայն. զէակիցն Հօր եւ Հոգւոյն։

† Լոյս ի լուսոյ ծագեալ ի Հօրէ. եւ լուսաւորեաց զտիեզերս. ծնեալն անապական յանստուեր լուսոյն Զոր մինչ փառաւորեն դասք անմարմնոցն։ Յայտնի է ի Հրէաստանի Աստուած եւ ի Բեթղեհէմ ծնեալ յայրին. մանուկ անժամանակ ի Հօրէ. եւ ժամանակաւ գոյացեալ ծնեալ լինի. Աստուած եւ մարդ։ Եւ հովուացն տեսեալ ընդհրաշալի ծագումն աստեղն փութապէս եկեալ տեսին. մանուկ եդեալ յանբանից մսուր գոր։

ՏՆ. Քրիստոս ծնեալ այսօր ի Բեթղեհէմ ի յայրին. եւ դասք վերին զուարթնոցն սոսկացեալ. զարմացեալ կային. Զի տեսին մարմնով ծնեալ զԲանն Աստուած։ Նոր սքանչելիք եղեն այսօր ի Բեթղեհէմ ի յայրին. կուսէ ծնանի Աստուած եւ մարդ. անապական միաւորով կուսական որովայնին. զի տեսին։ Աստղըն գուշակէր մոգուցն առ ի բերել զընծայս աստուածութեանն. եւ հովիւքն ընդ հրեշտակս երգէին ասելով. փառք ի բարձունս Աստուծոյ որ առաքեաց ի փրկութիւն մեզ զԲանն Աստուած։

ՏՆ. Որ ի հրեղէն աթոռ ընդ Հօր ես բազմակեալ. եւ ի հրեշտակաց սպասաւորեալ. այսօր կամաւ Հօր ի յերկրի երեւեցար մարմնով կուսական ծննդեամբ. Զքեզ ընդ զօրս անմարմնոցն անդադար օրհներանեմք։ Յորմէ զարհուրեալ դողան սրովբէագունդ ջոկք աթոռոցն. թեւաքօղելով ծածկեն զերեսս իւրեանց. այսօր աղաչաբար ի կուսական ի ստեանցն կերակրեցար մարդասիրապէս. զքեզ։ Որ յանպատում փառացդ խոնարհեցար յերկիր. աղքատակեր եղեր

հողեղէն բնութեանս. այսօր ըզմեզ նորոգեցեալ ընծա-
Հայրըն կենագործեցեր ի կեանսըդ յաւիտենից մար-
դասիրապէս. զքեզ ընդ զօրս անմարմնոցն ան-
դադար օրհնաբանեմք ։

Ծն. Որ անստեղծ և անքննելին քառակերպեանցըն վե-
հագոյն. ի փրկել ըզմեզ եկեալ անմահից թագաւոր-
օրհնութիւն մատուցողին ։ Առաքէ հրեշտակապետ-
ար սերովբէն հողեղէն. ասէ՝ Տէրն և արարողն առա-
քեալն ի Հօրէ մարմնանայ ի քէն փրկողն ։ Մըկր-
տի ի Յորդանան վըկայելով Հօր և Հոգւոյն. ովսաննայ
ի բարձունս երգէին մանկունքն օրհնութիւն որդւոյ
Դաւթի ։

Ծն. Որ կերպարան Հօր և արարչակից Բանդ. վա-
սըն փրկութեան ազգի մարդկան. այսօր ի կուսէ
ըզկերպարանըս ծառայի ըզգեցար մարդասիրա-
պէս. քոց ամենակեցոյց գալըստեամբդ ողորմեա մեզ
Աստուած ։ Որ յանմատոյց լուսոյ ծագեալ ընդ
Հօր և սուրբ Հոգւոյն. ի քրովբէականըն հանգչէիր յա-
թոռ. այսօր խանձարրովք պատեցար և յանսահմանն
մըսուր եդար մարդասէր ։ Որ եկիր ի փրկութիւն ազ-
գի մարդկան. թագաւոր փառաց քո անճառ խոնար-
հութեամբդ. այսօր ըզմեզ դատապարտեալ ան-
եմ ի մահ. նորոգեա ի կեանսըդ յաւիտենից մեր ։

Ծն. Որ էրն ի սկըզբանէ առ Աստուած և Աստ-
ուած Բանն. կերպարան Անեղին և համագոյ սուրբ
Հոգւոյն. ի վերջին աւուրըս ծանուցեալ մարմնանալ
յանձն առնուս ի կուսական յարգանդէ. վասըն փըր-
կութեան ազգի մարդկան ։ Յառաջ քան զյաւիտեանս
Որդի նախայաւիտեան. այսօր յերկրի երեւեալ. Աս-
տուած և մարդ կատարեալ. խանձարրովք պատ-

եղանի և դնի յանթանից մրտուր . վասըն ։ Ի՞ բեթ-
ղեհէմ Հրէաստանի երեւի արդարութեան արեգակն . այ-
սօր երկրպագեն Անեղն յարեւելից եկեալ մոգուց . եւ
փառաբանեն յերջանիկ ի բացօթեայ հովուացս . վասըն ։

Մն. Բարեխօսութեամբ . ծնողի քո եւ միշտ կուսի .
հայցեմք ի քէն Քրիստոս փրկիչ աշխարհի . վասըն զի
բայց ի քէն զայլ ոք ոչ գիտեմք մարդասէր ։ Ա-
մենօրհնեալ աստուածամայր Մարիամ . քերովբէական
աթոռ արարչին մերոյ տնօրէնութեան . զոր երա-
նեն ամենայն ազինք հանապազ ։ Բարեխօսու-
թեամբ սուրբ Աստուածածնի . եւ միշտ կուսի ա-
ղաչեմ . Տէր ողորմեա . փրկեա զմեզ ի յորոգայթէ
յաներեւոյթ թշնամւոյն ։

Հգ. Աղբիւր կենաց բաշխող շնորհաց Հոգին իջեալ
ի բարձանց . զանապական պարգեւըս քո բաժանե-
ցեր յառաքեալսն ։ Որ ի վերայ ջուրցըն գոլով ստեղ-
ծանէիր զարարածս . իջեալ ի ջուրս աւազանին ծնա-
նիս որդիս Աստուծոյ ։ Որ զարդարեալ նորոգես միշտ
ըզնոր քո զեկեղեցի . պէս պէս շնորհաց քոց պարգեւօք
փայլեն մանկունք սորա ։

Հն. Որ արարիչդ ես արարածոց հանգուցեալդ ի
հրեղէն կառս . Յիշեա զհոգիս ննջեցելոց մերոց
եւ հանգո ընդ սուրբըս քո ։ Որ երկայնամիտդ ես առ
ամենեսեան . եւ ներող յանցանաց մերոց . յիշեա ։
— Փառք Հօր ։ Որ միանգամ գալոց ես հայրենի փա-
ռօք . նորոգել զնախաստեղծին ծնունդ . յիշեա ։
— Այժմ և միշտ ։ Խընդա և ուրախ լեր անհարսա-
նացեալ Մարիամ . քանզի որ ի քէն ծնաւ Փրկիչ .
Տէր է օծեալ ի քաղաքի Դաւթի զոր միշտ փառաւո-
րեն դասք երջանիկ հովուացն ։

Ալէլուիա Ծննդեան է յայնէն ։

## ՑԱՌԱՒՕՏՈՒ

### ՀԱՐՑ ԳՁ

Ի կուսական որովայնէ ծնեալ մարմնով. որ յառաջ քան զյաւիտեանս Բանդ ի Հօրէ ‖ Երգեսցուք. Տէր Աստուած փառաւորեալ է անուն քո։ Ի քերովբէս բազմեալ ընդ Հօր անըսկիզբն Որդի. անճառաբար տղայացեալ ի խանձարուրս պատեցար երգեսցուք։ Ամենայն բարութեանց տուող ազգի մարդկան. և ի մոգուցն այսօր ընծայեցար երգեսցուք։

Գ. ԸզՏէր ‖ օրհնեմ։ [illegible] բարձր արարէք ըզնա յաւիտեան։ Որ յանճառելի աթոռ ընդ Հօր փառակիցդ Բանն. ի յերկրի երեւեցաւ օրհնեմ։ Որ ի կուսէ անապական թագաւոր ծնեալ Քրիստոս. և ի հրեշտակաց անդադար փառաբանի Աստուած. քահանայք օրհնեմ։

### ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԳՁ

Լոյս լուսոյ մայր. և կենարար Բանին բնակարան. ‖ Քեզ երանիցեն ազգ և ազինք ամենայն։ Ստեղծողին մայր. և հնութեան կերպի նորոգողին. քեզ։ Լոյս ծագեցաւ ի քէն. նշանալոյս ի խաւարամածի. քեզ։

### ՈՂՈՐՄԵԱ ԳՁ

Զանձաւոր բարբառս վերնոցն հնչեւոր հնչմամբ երգով ընկալեալ հովուացն օրհնէին ըղձ[illegible]. և ըղձանգումբն յանմեկնելի լուսոյն։ Հրեշտակապետին աւետեօքն ընթացեալք ի յայրն. տեսին զի նուաստացեալ էր անտեսն սերովբէից. Մանուկ եղեալ յանբանից մըսուր։ Գիտելով մոգուցն ըղձափայլումն աստեղն. սա զԱստուած գուշակեալ լինի. զի ի տեսիլ մարմնացելոյն ժամանեալ. նմա մատուցանելով զերկրպագութիւն։

Digitized by Google

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԳԶ

Դասք անմարմնականք երկնաւոր զօրացն . ի մէջ հրա-
ւուացն օրհնէին ըզծայօղըն լուսոյ . մեծին ի հօրէ
մեզ ի փրկութիւն ։ Եւ մե ծգքն աստեղբ նըշանաւ .
եկին ի բեթղեհէմ երկրպագին Տեառն եւ ի
յայրին մատուցին զընծայս խորհըրդոյ ։ Եւ հովի ծւքն
երգեն ընդ հրեշտակըս . փառք ի բարձունս
մեծին Աստուծոյ որ եկիր և փրկեցեր ըզտիեզերս քո-
յով յայտնութեամբդ ։

Ա—— Երգ. Արեգակն արդար ։ Ի վայելչութիւն փա ։
Քարոզ Մայր սուրբ ։
Զինչ Սուրբ Աստուածածին Մաղ. փրկել ։ Քար. Վասն
լսելի ։ Քահ. Օրհնութիւն և փառք ։ Աղօ

ՍԱՂՄՈՍ ՃԹ. յայնժ

ԿՑ. Ի վայելչութիւն սրբոց քոց յարգանդէ յառաջ քան
զարուսեակ ծնայ զքեզ ։

Փխ. Ասաց Տէր ցՏէր իմ, Նիստ ընդ աջմէ իմմէ, մինչև
եդից զթշնամիս քո պատուանդան ոտից քոց ։

Գաւազան զօրութեան առաքեսցէ քեզ Տէր ի Սիովնէ,
և տիրեսցես դու ի մէջ թշնամեաց քոց ։

Ընդ քեզ է սկիզբն աւուրց զօրութեան, ի վայելչու-
թիւն սրբոց քոց յարգանդէ յառաջ քան զարուսեակ ծնայ
զքեզ ։

Երդուաւ Տէր և ոչ ևս զղջասցի, թէ դու ես քահանայ
յաւիտեան ըստ կարգին Մելքիսեդեկի, և Տէր ընդ աջմէ
քումմէ ։

Խորտակեսցէ յաւուր բարկութեան զթագաւորս . դատի
զհեթանոսս և բազում առնէ զհարուածս, և խորտակեսցէ
զգլուխս բազմաց յերկրի ։

Ջուրս ի ճանապարհի արբուսցէ, վասն այնորիկ և
բարձր արասցէ զգլուխս ։

Ալէլուիա, Օրթի

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մարկոսի ։ Ա. 1 ։

Սկիզբն աւետարանի Յիսուսի Քրիստոսի Որդւոյ Աստու-

ծոյ։ Որպէս և գրեալ է ի մարգարէս. ահաւասիկ ես առաքեմ զհրեշտակ իմ առաջի քո, որ հանդերձեսցէ զճանապարհս քո առաջի քո։ Ձայն բարբառոյ յանապատի, պատրաստ արարէք զճանապարհ Տեառն, և ուղիղ արարէք զշաւիղս նորա։ Եւ եղև՝ զի Յովհաննէս մկրտէր յանապատի, և քարոզէր մկրտութիւն ապաշխարութեան ի թողութիւն մեղաց։ Եւ երթայր առ նա ամենայն աշխարհն Հրէաստանի, և Երուսաղեմացիք ամենեքեան. և մկրտէին ի նմանէ ի Յորդանան գետ՝ խոստովանեալ զմեղս իւրեանց։ Եւ էր Յովհաննէս զգեցեալ ստև ուղտու, և գօտի մաշկեղէն ընդ մէջ իւր, և կերակուր նորա մարախ և մեղր վայրենի։ Քարոզէր և ասէր. գայ զօրագոյնն քան զիս զկնի իմ, որում չեմ բաւական խոնարհել լուծանել զխրացս կօշկաց նորա. ես մկրտեցի զձեզ ջրով, և նա մկրտեսցէ զձեզ Հոգւով սրբով։ Եւ եղև յաւուրսն յայնոսիկ եկն Յիսուս ի Նազարեթէ Գալիլեացւոց, և մկրտեցաւ ի Յովհաննէ ի Յորդանան։ Եւ նոյնժամայն ընդ ելանել ի ջրոցն, ետես ցելեալ զերկինս, և զՀոգին Աստուծոյ իբրև զաղաւնի՝ զի իջանէր ի վերայ նորա։ Ձայն եղև յերկնից և ասէ. դու ես Որդի իմ սիրելի, ընդ քեզ հաճեցայ։ Եւ նոյնժամայն Հոգին հանէ զնա յանապատ։ Եւ էր նա անդ զաւուրս քառասուն փորձեալ ի սատանայէ. և էր ընդ գազանս, և հրեշտակք պաշտէին զնա։ 13։

Աղօ. զԱրարչականն տօն զինչ որ օրն բերէ։
Քար. Խնդրեսցուք։ Կեցո. Յայնժ։ Աղ. Քում ամենազօր։

---

## ՅԵՐԵԿՈՅԻՆ

ՄԵՍԵԴԻ Ծննդեան։ Մեծացուցէ անձն։ Զի հայեցաւ։
Քարոզ Մայր սուրբ։

ՀԱՄԲԱՐՁԻ Գ.Կ

Էակից Հօր և Հոգւոյն անսկիզբն։ Վեց տուն։ Ի վերջ։
Քար. Սուրբ զԱստուա։ Կեցո. Յայնժ։ Աղ. Ընկալ Տէր։

---

# Գ. ՕՐ ՅԱՅՏՆՈՒԹԵԱՆ

## Ի ԳԻՇԵՐԻ

ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԳԿ

Էակից Հօր և Հոգւոյն. անսկիզբն Որդի. ան-

մայր յառաջնոյն անդրանիկ. եւ ընդ Հօր յաւի-
տեան: Ի ծոցոյ Հօր առաքեալ. եղեալ ի մըսուր
յանասնոց. Բանդ Աստուած յայտնեալ: Քրիստոս ծը-
նեալ ի քաղաքի Դաւթի. քարոզեն հովիւքն ընդ
հրեշտակս. եւ մոգք հանդերձ աստեղբն:

✝ Որ ըզմարմնացեալըն տիրաբար. ի յորովայնի
քում կրեցեր ‖ ուրախ լեր անհարսնացեալ
մայր: Որ զանտանելին յէից ի յարգանդի. անապա-
կանաբար կրեցեր ուրախ:

ԾՆ. Հրաշափառ ծընունդ քո ի սուրբ կուսէն. այ-
սօր ցուցաւ ազգի մարդկան. անըսկըզբնակից Բանդ
ճանկից Հօր: Յայտնութեամբ քո Տէր ցընծացաւ եր-
կիր. եւ նորոգեալ եղեւ Ադամ. յառաջին յանցանաց
ի մեղաց իւրոց: Դասք հովուացն յերկրի փառաւորէին.
ըզքո ամենակեցոյց գալուստ. որ երեւեցար քո արա-
րածոցս:

ԾՆ. Ծառ կենաց տընկեալ յադին սուրբ կոյս. որ
ըզհայրածինըն բըղխեցեր զծաղիկ եւ ետուր ի ժա-
մու զՈրդին պըտուղ մարդկան. զորոյ զմարմինըն ճա-
շակեալ անմահացան յուսով. ‖ վասն որոյ օրհնաբանեմք
ըզքեզ յաւուր քո ծնընդեան: Բանաւոր երկիր Տիրու-
հի եւ անդաստան մաքուր ի փշոց մեղաց որ ըզ-
բոյսն երկնային առանց սերման ծընար. որով զկե-
նացն ետուր ըզհաց սովեալ բնութեանս. վասն: Ամպ
թեթեւ յերկրային ցանկութեանց սուրբ կոյս եւ վառա-
րան աստուածային բոցոյն որ ըզցօղն հայրաբուղխ
անձրեւեցեր ի բանական երկիր. որով բնութեանս
բուսան արդարութեան սուրբ բոյսք. վասն որոյ օրհ-
նաբանեմք:

ԾՆ. Աստուածածին խորան լուսոյ. անվայրափակ

Digitized by Google

արփւոյն կենաց որ եղեւ մեր արեւելք արեգականն ար-դարութեան. եւ նշուլեցար ի խաւարի լոյս ծագեցեր. Վասն որոյ ամենեքեան ըզքեզ միշտ մեծացուցանեմք. Անապական տաճար. եւ մորենի անկիզելի որ զան-չէջ հուր աստուածութեանն ի քեզ տարեալ կրե-ցեր. որով բնութեանս կիզեալ շիջաւ կրից բոց. վասն: Կենդանի տապանակ. կտակարանաց նորոյ ուխտի որով եղեւ մեզ յերկիր ուեստեաց հորդեալ. Հոգւով ի քեզ տըպաւորեալ Բանին. վասն:

ԾՆ. Զաստուածածինն և զմիշտ կոյսն. անդադար օր-հնեսցուք զանձինս. քանզի ծագեաց մեզ լոյս երկնային եւ փըր-կիչ անձանց մերոց: Խնդա եւ ուրախ լեր անճառա-նացեալ մայր. քանզի որ ի քէն ծընաւ. մեզ ածեալ զ-Աստուած ի փրկութիւն անձանց մերոց: Գանձ ա-նապական գըտաւ սուրբ Աստուածածին. բարեխօսեա Քրիստոսի Աստուծոյ մերում կեցուցանել զանձինս մեր:

ԾՆ. Մայր և կոյս աղախին Քրիստոսի. որ բարեխօսեաց ես միշտ աշխարհի. Քեզ երանեսցեն ամենայն ազգք: Մաքուր աղաւնի եւ հարսն երկնից Մարիամ. տաճար եւ աթոռ Աստուծոյ Բանին. քեզ: Քեւ հաշտեցան ի-մանալիքն ընդ հողեղէնքս. եւ քեւ մերձեցաք ի փայ-տըն կենաց. քեզ:

ԱՊ. Աղբիւր կենաց բըղխեալ յեդեմայ սուրբ Աս-տուածածին. որով արբեցաւ երկիր ծարաւեալ հոգւոյն իմաստութեամբ. տալ մեզ մաղթեա անդրբուխ առատութեանց. մաքրել ըզմեզ ի մեղաց մերոց: Աստուածածին սուրբ լուսոյ ամպ հովանաւոր. եւ բնակարան Բանին որ բա-նիւ հովուէր զիսրայէլ. բարեխօսեա նըմա վասն ան-ձանց մերոց: Զանապականն կոյսըն Մարիամ Աստու-

ծածին խոստովանի սուրբ եկեղեցի. ուստի տուաւ հաց անմահութեան եւ բաժակ մեզ ուրախարար. տուք օրհնութիւնք նման հոգեւոր երգով ։

ՀԳ. Զանըսկըզբընաբար բըղխումն ի Հօրէ զՀոգին ճըշմարիտ. որ հըսկըմամբ ձայնի էջ ի վերնատունն այսօր նըման սաստիկ հողմոյ. Զոր փառաւորեմք հոգեւոր երգով. Զհամագոյակիցըն Հօր եւ Որդւոյ զբաշխողըն շնորհաց. որ ի հրեղէն լեզուս բաժանեալ զբանն ընտրութեան լեզուաց շնորհեաց սուրբ առաքելոցն. Զոր ։ Զաղբիւրն իմաստութեան ըղկատարեալն անձնաւորութեամբ. որ խօսեցաւ յօրէնս և ի մարգարէս եւ յաւետարանս. Զոր ։

ՀԴ. Լեառըն վիմածին աղբիւր յորդառատ. բարունակ ծաղկեալ այգի վայելուչ սրովբէ հողեղէն. բարունոյ Բանին տուն անօրէնութեան տաղաւար Հոգւոյն. Լոյս ծընեալն ի քէն միշտ բարեխօսեա անդադար հայցմամբ. շնորհել զթողութիւն մեր ննջեցելոցն ։ Փափկութեան դրախտին բացող բանալի. Քրիստոսի բարձող նմանող երկնից. սափոր ոսկեղէն լի մանանայիւ. գաւազան ծաղկեալ յարմատոյն Յեսսեայ տաճար լուսոյ մայր. Լո ։ — Փառք Հօր ։ Յօղ քաղցրածաւալ ցանկալի զուարթնոցն. նիւթեղէն սրովբէ գեղ մարգարտափայլ հիմն եկեղեցւոյ. մաքուր աղաւնի անպ հովանաւոր սուրբ կոյս Մարիամ. Լո ։

— Այժմ և միշտ ։ Որ զարարչակից Բանին գոյացեալ. ըստուգապէս աշխարհի ծընար. ուրա ։ լեր անհարսնացեալ մայր ։

Ալէլուիա Ծննդեան է յայնէն ։

## ՑԱՌԱՒՕՏՈՒ

### ՀԱՐՑ ԴԿ

Աքանչելագործ Աստուած զքեզ բարեբանեմք. որ ի քերովբէական աթոռդ նստեալ Աստուած Հարցըն մերոց։ Որում ոչ բաւեն երկինք ընդունել զանբաւելի զբընութիւնդ. յարգանդի կուսին բնակեցար. ծընար անճառապէս Աստուած։ Զոր վեցթեւեան սրովբէքն ոչ իշխէին հայել ի քո աստուածութիւնդ. տեսանելով ի գիրկըս կուսին զարմացեալք օրհնէին ըզքեզ Աստուած։

Գ. Ըզ Տէր օրհնեցէք եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան։ Որ ի կուսէ անապականն թագաւոր ծընաւ Քրիստոս Աստուած. յորըմէ դաս[illegible]ղան իմանալի զօրութիւնքն օրհնեցէք ժողովուրդք եւ բարձր։ Որ մըկըրտեցաւն ի Յորդանան եւ լուաց ըզաղտեղեալս ի մեղաց. վըկայեալ ձայնիւ Հօր եւ երեւմամբ սուրբ Հոգւոյն օրհնեցէք քահանայք առաւել բարձրացուցէք ըզնա յաւիտեան։

### ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԴԿ

Աստուածածին սուրբ կոյս անհարսնացեալ Մարիամ. որ օրհնեալդ ես ի կանանց. զքեզ օրհնեմք միշտ որ արժանիդ ես մեծացուցանելոյ։ Անապական տաճար եւ աստուածային լուսոյ. որ ի քեզ փեսայացեալ Բանն կենաց բնակեցաւ. զքեզ։ Հուրբն կենդանի որ ի մորենին վառեցաւ. զոր անվընաս յարգանդի քում կրեցեր եւ ծընար Աստուած եւ մարդ. զքեզ։

### ՈՂՈՐՄԵԱ ԴԿ

Որ կերպարան Հօր եւ արարչակից Բանդ. վասն փըրկութեան ազգի մարդկան. այսօր ի կուսէ

ըզկերպարանըս ծառայի ըզգեցար ‖ մարդասիրամ-
պէս. քո ամենակեցոյց գալըստեամբդ ողորմեա մեզ
Աստուած: Որ յանմատոյց լուսոյ ծածկեալ ընդ
Հօր և սուրբ Հոգւոյն. ի քրովբէական հանգչէիր յա-
թոռ. այսօր խանձարուրովք պատեցար եւ յանբանից
մըսուր եղար մարդասէր: Որ եկիր ի փըրկութիւն ազ-
գի մարդկան. թագաւոր փառաց քո անճառ խոնար-
հութեամբդ. այսօր ըզմեղօք դատապարտեալ անձն
իմ ի մահ. նորոգեա ի կեանըդ յարութենից մեր:

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԴԿ

Քրիստոս ծընեալ այսօր ի Բեթղեհէմ ի յայրին.
եւ դասըք վերին զըւարթնոցըն սոսկացեալ. զարմա-
ցեալ կային. ‖ զի տեսին մարմնով ծընեալ ըզ-
Բանն Աստուած: Նոր ըսքանչելիք եղեն այսօր ի
Բեթղեհէմ ի յայրին. կուսի ծընանիլ Աստուած և
մարդ. անապական մնալով կուսական որովայնին.
զի տեսին: Աստղըն գուշակէր մոգուցն առ ի բերել
զընծայս աստուածութեանն. եւ հովիւքն ընդ հրեշտակս
երգէին ասելով. փառք ի բարձունս Աստուծոյ որ ա-
ռաքեաց ի փըրկութիւն մեզ ըզԲանն Աստուած:

Առաւօտու Երգ. Արեգակն արդար: Ի վայելչութիւն փա:
Քարոզ Մայր սուրբ:
ՍԱՂՄ. ՃԹ. Յաղէ—: 48. Ի վայելչութիւն սրբոց: 1149:

Ալէլուիա, Օրթի

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մատթէոսի: Գ. 1:
Վասն մկրտութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի:

Յաւուրսն յայնոսիկ գայ Յովհաննէս Մկրտիչ քարոզել
յանապատին Հրէաստանի, և ասել. ապաշխարեցէք՝ զի
մերձեալ է արքայութիւն երկնից. զի սա է՝ վասն որոյ ա-
սացաւ ի ձեռն Եսայեայ մարգարէի, որ ասէ. ձայն բար-
բառոյ յանապատի, պատրաստ արարէք զճանապարհ Տեա-
ռըն, և ուղիղ արարէք զշաւիղս նորա: Եւ ինքն Յովհան-

նէս ունէր հանդերձ ի ստեաց ուղտու, և գօտի մաշկեղէն ընդ մէջ իւր, և կերակուր նորա էր մարախ և մեղր վայրենի: Յայնժամ ելանէին առ նա ամենայն Երուսաղեմացիք և ամենայն Հրէաստան և ամենայն կողմն Յորդանանու, մկրտէին ի նմանէ ի Յորդանան գետ, և խոստովան լինէին զմեղս իւրեանց: Եւ տեսեալ զբազումս ի սադուկեցւոց և ի փարիսեցւոց եկեալս ի մկրտութիւն նորա՝ ասէ ցնոսա. ծընունդք իժից, ո՞ ցոյց ձեզ փախչել ի բարկութենէն որ գալոցն է: Արարէք այսուհետև պտուղ արժանի ապաշխարութեան, և մի համարիցիք ասել յանձինս՝ թէ ունիմք մեք հայր զԱբրահամ. ասեմ ձեզ, զի կարօղ է Աստուած ի քարանցս յայսցանէ յարուցանել որդիս Աբրահամու: Զի ահաւասիկ տապար առ արմին ծառոց դնի. ամենայն ծառ որ ոչ առնիցէ զպտուղ բարի, հատանի և ի հուր արկանի: Ես մկըրտեմ զձեզ ջրով յապաշխարութիւն, բայց որ զկնի իմ գայ՝ հզօրագոյն է քան զիս, և ես չեմ բաւական բառնալ զկօշիկս նորա. նա մկրտեսցէ զձեզ ի Հոգին սուրբ և ի հուր: Որոյ հեծանոցն ի ձեռին իւրում, և սրբեսցէ զկալ իւր, և ժողովեսցէ զցորեանն ի շտեմարանս իւր, և զյարդն այրեսցէ անշէջ հրով: Յայնժամ գայ Յիսուս ի Գալիլեէ ի Յորդանան առ Յովհաննէս՝ մկրտել ի նմանէ: Եւ Յովհաննէս արգելու զնա՝ և ասէ. ինձ պիտոյ է ի քէն մկրտել՝ և դու առ իս գաս: Պատասխանի ետ Յիսուս և ասէ ցնա. Թոյլ տուր այժմ, զի այսպէս վայել է մեզ լնուլ զամենայն արդարութիւն: Եւ ապա թոյլ ետ նմա: Եւ իբրև մկրտեցաւ Յիսուս, ել վաղվաղակի ի ջրոյ անտի. և ահա բացան նմա երկինք, և ետես զՀոգին Աստուծոյ՝ զի իջանէր իբրև զաղաւնի և գայր ի վերայ նորա: Եւ ահա ձայն յերկնից որ ասէր. դա է Որդի իմ սիրելի՝ ընդ որ հաճեցայ: Յայնժամ վարեցաւ Յիսուս յանապատ ի Հոգւոյն՝ փորձել ի սատանայէ: Եւ պահեալ զքառասուն տիւ և զքառասուն գիշեր՝ ապա քաղցեաւ: Եւ մատուցեալ փորձիչն ասէ ցնա. եթէ որդի ես Աստուծոյ՝ ասա զի քարինքս այսոքիկ հաց լինիցին: Նա պատասխանի ետ և ասէ. գրեալ է՝ թէ ոչ հացիւ միայն կեցցէ մարդ, այլ ամենայն բանիւ որ ելանէ ի բերանոյ Ա-տուծոյ: Յայնժամ առեալ ածէ զնա սատանայ ի քաղաքն սուրբ, և կացուցանէ զնա ի վերայ աշտարակի տաճարին, և ասէ ցնա. եթէ որդի ես Աստուծոյ՝ արկ զքեզ աստի ի վայր. զի գրեալ է՝ թէ հրեշտակաց իւրոց պատուիրեալ է

Digitized by Google

վասն քո՛ և ի վերայ ձեռաց բարձցեն զքեզ, զի մի՛ երբեք հարցես զքարի զոտն քո։ Ասէ ցնա դարձեալ Յիսուս. գրեալ է՝ թէ ոչ փորձեսցես զՏէր Աստուած քո։ Դարձեալ առնու ածէ զնա սատանայ ի լեառն մի բարձր յոյժ, և ցուցանէ նմա զամենայն թագաւորութիւնս աշխարհի և զփառս նոցա, և ասէ ցնա. զայս ամենայն քեզ տաց՝ եթէ անկեալ երկիր պագանիցես ինձ։ Յայնժամ ասէ ցնա Յիսուս. երթ յետս իմ սատանայ. զի գրեալ է, Տեառն Աստուծոյ քում երկիր պագցես, և զնա միայն պաշտեսցես։ Ապա եթող զնա սատանայ, և ահա հրեշտակք մատեան և պաշտէին զնա։ Դ. 11։

Արարչա։ Քար. խնդրես։ կեցո. Յայնժ։ Աղ. Քում ամեն։

---

### ԵՐԵԿՈՅԻՆ

ՄԵՍԵԴԻ Ծննդեան. Տէր ասաց ցիս։ Ընդէ՞ր խռովեցան։ Քարոզ Մայր սուրբ։

#### ՀԱՄԲԱՐՁԻ ԳԶ

Այսօր Գաբրիէլ ցնծութեամբ երգ։ Վեց տուն։ Ի ձայն։ Քար. Սուրբ զԱստուած։ կեցո. Յայնժ։ Աղ. Ընկալ Տէր։

---

# Դ. ՕՐ ՅԱՅՏՆՈՒԹԵԱՆ

### Ի ԳԻՇԵՐԻ

#### ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԳԶ

Այսօր Գաբրիէլ ցընծութեամբ երգեաց սրբոյ կուսին աւետիս բերկրեաց ասելով. որ ծընաւ ըզփըրկիչ անձանց մերոց։ Անբաւելին երկնի և երկրի. ի կուսական արգանդէ մեզ կեանք յայտնեցաւ. Աստըւած այցելու մարդկան։ Ցառաջընթաց փայլմամըն լուսատեսիլ աստեղն. մոգուցըն հետեւելով նըշանին ի ծընունդ Աստուածորդւոյն։

† Այսօր Գաբրիէլ հրեշտակըն ցընծութեամբ երգեաց առ կոյսըն սուրբ. ասէ ուրախ լեր բերկրեալդ Տէր ընդ քեզ։ Այսօր աւետիք հրեշտակապետին. ցընծութեամբ լըցին ըզկոյսըն սուրբ. քանզի էջ Միածինըն յարգանդ կուսին։

ՏՆ. Այսօր որ յաւիտեան փառաց ընդ Հօր ծնեալն է ի սրբոյ կուսէ մարմնացեալ Բանն. ծնանելով զտիեզերս յորդեգրութեան շնորհս։ Այսօր անպարագրելի Բանն Հօր բազմի ի մսուր յանբանից բոլորից Տէրն. և ի վերայ քերովբէիցն հանգչի։ Որ նոյն ինքն է ճառագայթ փառացն Հօր. և ցոլանայ հայեր մկրտեալ ի Յորդանանու յորձանս. առաքելական կոչմամբ զտիեզերս հրաւիրելով։

ՏՆ. Անսկզբնական տեսիլ փառաց քոց տղայ որ ի մեզ հրաշագործեցաւ երևելով անճառապար ծննդեամբ. այսօր ցնծութիւն յայտնեցաւ տիեզերաց։ Անմարմնական հոգեղինացն երգակցելով. բոցեղէն փայլմամբ թափանցիկ հրածին ամպոյն սիւն գործեալ յայրին. այսօր դասակից եղեն հովիւքն հանդիսին վերնոցն։ Ընդհանուր ծաւալեցաւ ծագումն լուսոյ. մոգուցն հետևելով աստեղբն գուշակեալ զծնունդ յայրին. ընդ մատուցանէին զընծայս աստուածային ծննդեանն։

ՏՆ. Ճառագայթ և կերպարան էութեան Հօր Բանդ Աստուած ընդ քեզ մեզ բարեբանեմք անսելով փառք ի բարձունս Աստուծոյ։ Որ միացար ի մարմնի անճառապէս ճշմարիտ Աստուած ընդ քեզ։ Որ զանձինցն բարձեր զդատապարտութիւն Քրիստոս Աստուած ընդ քեզ։

ՏՆ. Դասք անմարմնականք երկնաւոր զօրացն. և ընդ հովուացն օրհնէին զծնունդն լուսոյ. մեծին ի Հօրէ մեզ ի փրկութիւն։ Եւ մոգք աստեղբն նշանաւ. եկին ի Բեթղեհէմ երկրպագին Տեառն և ի յայրին մատուցին զընծայս խորհրդոյ։ Եւ հովիւքն երգեն ընդ հրեշտակս. փառք ի բարձունս մեծին Աստուծոյ որ եկիր և փրկեցեր զտիեզերս քո յով յայտնութեամբ։

Digitized by Google

ԾՆ. Զանճառելի լուսոյ մայր. եւ ըզբնակարան անըսկըզբնակից Որդւոյն. ‖ Օրհնութեամբ մեծացուցանեմք ։ Զանհաս տընօրէնութեան մայր. եւ զանձնաւոր տաճար Աստուծոյ Բանին. օրհնութեամբ ։ Զբոլորից փըրկութեան մայր. որ զանտանելին յէից ի յարգանդի եբարձ. ըզնա ամենեքեան օրհնութեամբ ։

ԱԳ. Անտանելւոյն տաղաւար բարձրող էիցըս բարձրողին. որ ծընար զԱստուած մարմնով զանմարմնաբար ծընունդըն Հօր. բարեխօսեա վասըն մեր Աստուածածին Մարիամ ։ Որ վառեցար ի յարփւոյն եւ ոչ կիզար ըստ մորենւոյն. այլ եւ տուր զհացըն կենաց կերակուր բանաւորաց. բարեխօսեա առ Քրիստոս ջընջել ըզգիր մեղաց մերոց ։ Աստուածածին դու ես յոյս եւ ապաւէն խոստովանողացս ըզքեզ որդւոյ քո և Աստուծոյ բարեխօսեա կեցուցանել ըզմեզ ։

ՀԳ. Արեգակն արդարութեան Քրիստոս ծագեալ յաշխարհս հալածեաց ըզխաւարն անգիտութեան. եւ յետ մահու եւ յարութեան համբարձաւ առ Հայր յորմէ ծագեաց. որ երկըրպագի յերկնաւորաց եւ յերկրաւորաց ընդ Հօր եւ սուրբ Հոգւոյն. ‖ վասն որոյ և մեք երկըրպագանեմք Հօր Հոգւով եւ ճըշմարտութեամբ ։ Որ փոխանակ ծոցածին Բանին որ ել յերկինս. առաքեցաւ աւետիքըն Հօր ի բարձանց Հոգին ճըշմարտութեան. մըխիթարել զորս յԱդամայ տըրտմեցելոց եւ հրաւիրել զընտրեալ դասս առաքելոցն. վասն ։ Այսօր տըրտմական և գիշերային լուծան երկունք ծնընդեան նախամօրն. քանզի զծնեալըն մարմնով ի մահ եւ յապականութիւն. վերըստին ծնանի Հոգին յորդիս լուսոյ Հօրն երկնաւորի. վասն ։

Հն. Որ խոնարհեցար յերկնից Բանդ Աստուած. և առեր մարմին ի սրբոյ կուսէն. Յիշեա ընդ ննջեցեալսըն մեր. յորժամ գայցես անճառ փառօք զի գալ ես Տէր ամենայն երկրի։ Որ ունիս իշխանութիւն մահու և կենաց. և խոնարհեալդ քո լուծեր զերկունս մահու. յիշեա։ — Փառք Հօր։ Ի նստել քո յատենի դատաւոր ահեղ. աղաչանօք սուրբ Աստուածածնին. յիշեա ընդ ննջեցեալսըն մեր յորժամ գայցես անճառ փառօք. քանզի քո են փառք յաւիտեանս ամէն։

— Այժմ և միշտ։ Այսօր տիեզերք պայծառացան. աւետեօք սրբոյ կուսին. քանզի Բանն մարմին եղև և բնակեաց ի մեզ։

Ալէլուիա Ծննդեանն է ձայնէն։

---

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

### ՀԱՐՑ ԴԿ

Որ ի ծոցոյ Հօր Բանդ Աստուած աներևակելիդ. յորգանդի կուսին բնակեալ յանձն առեր։ Ընդ քեզ գոհաբանեմք Աստուած հարցըն մերոց։ Որ յանարատ աթոռ նստիս և ընդ Հօր ես յէութեան. յանդրանկաց մըտուր եղար թագաւոր փառաց. ընդ քեզ։ Որ ի քառակերպից երեքսրբեան ձայնիւ անդադար օրհնաբանիս. ի մոգուց պատարագօք պատուեցար յայրին. ընդ քեզ։

Գ. Ըզ Տէր օրհնեցէք Եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան։ Զթագաւորն անմահ Քրիստոս զէակից Հօր և Հոգւոյ. որ տղայացեալ այսօր յանարատ ի սուրբ կուսէն. փրկելով ըզմեզ ժողովուրդք օրհնեցէք Եւ։ Արարիչն արարածոց Քրիստոս փառակից Հօր և Հոգւոյ. այսօր մկրտել ի յանձն էառ ի

ձեռամբ հողեղինի. սրբելով ըզմեզ քահանայք օրհնե-
ցէք եւ ․․․ ւ ։

### ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԴԿ

Ըզքեզ Աստուածածին. աղբիւր անսպառ լուսոյն. որ լուսաւորէ զհաւատացեալս. ‖ միշտ արժանական ձայնիւ երգով մեծացուցանեմք։ Դու ես պարծանք կուսութեան մարդկան. դու ուրախութիւն հրեշտակաց. դու ես բարձող անիծիցն. վասն որոյ ըզքեզ Աստուածածին. մեծացուցանեմք։ Դու ես ճշմարիտ արեւելք. արեգականն արդարութեան. յորմէ ծագեաց փրկութիւն տիեզերաց. միշտ արժանական։

### ՈՂՈՐՄԵԱ ԴԿ

Ըզքեզ աղաչեմք անսկզբնակից Հօր Որդի. որ այսօր. նախատեղծին բնութեամբ ի կուսէն ծընար. Աստուած եւ մարդ ‖ ողորմեա մեզ։ Առ քեզ պաղատիմք էակից Հօր Որդի. որ այսօր. ի մսուր եդար և ի հրեշտակաց պատուեցար. Աստուած եւ մարդ ող։ Ի քէն հայցեմք ճշմարիտ սուրբ Հոգի. որ այսօր. աղաւնակերպ երեւմամբ ը յայտնեցար աշխարհի. Աստուած ող։

### ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԴԿ

Որ ի հրեղէն աթոռ ընդ Հօր ես բընակեալ. եւ ի հրեշտակաց սպասաւորեալ. այսօր կամաւ Հօր ի յերկրի երեւեցար մարմնով կուսական ծնընդեամբ. ‖ զքեզ ընդ զօրս անմարմնոցն անդադար օրհնաբանեմք։ Յորմէ զարհուրեալ դողան սրովբէագունդ ջոկք աթոռոցն. թեւաքօղելով ծածկեն զերեսս իւրեանց. այսօր տղայաբար ի կուսական ի ստեանցըն կերակրեցար մարդասիրաբար. զքեզ։ Որ յանպա-

տուած փառաց խոնարհեցար յերկիր. աշխատակիր եղեր հոգեղէն բնութեանս. այսօր ըզմեղուցեալ ըզնախահայրըն կենագործեցեր ի կեանըդ յաւիտենից մարդասիրապէս. զքեզ ընդ զօրս անմարմնոցն անդադար օրհնաբանեմք:

Առաւօտու Երգ. Արեգակն արդար: Ի վայելչութիւն փա: Քարոզ Մայր սուրբ:

ՍԱՂՄ. ԾԹ. Յորդոր: Կց. Ի վայելչութիւն սրբոց: 1149:

Ալէլուիա, Օրթի

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Յովհաննու: Ա. 1:

Ի Հօրէն լուսոյ

Ի սկզբանէ էր Բանն և Բանն էր առ Աստուած: 1100:

Արարչա: Քար. Խնդրեսք: Կեցո. Յորդոր: Աղ. Քում ամեն:

ՅԵՐԵԿՈՅԻՆ

ՄԵՍԵԴԻ Ծննդեան. Իջցէ որպէս: Աստուած զիա:

Քարոզ Մայր սուրբ:

ՀԱՄԲԱՐՁԻ ԳՋ

Այսօր որ յաթոռ փառաց ընդ Հօր: Վեց տան: Ի կէս:

Քար. Սուրբ զԱստ: Կեցո. Յորդոր: Աղ. Ընկալ Տէր:

# Ե. ՕՐ ՅԱՅՏՆՈՒԹԵԱՆ

## Ի ԳԻՇԵՐԻ

ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԳՋ

Այսօր որ յաթոռ փառաց ընդ Հօր ծընանիս ի սըրբոյ կուսէն մարմնացեալ Բանն. ծնանելով զաւեղերս յորդեգրութեան շընորհս: Այսօր անպարագրելի Բանն Հօր բազմի ի մըսուր յանբանից բալորից Տէրն. և ի վերայ քերովբէիցըն հանգչի: Որ նոյն ինքն է ճառագայթ փառացըն Հօր. ի Յովհաննէ հայցէր մըկրտութիւն. ի Յորդանանու յորձանս. առաքելական կոչմամբ ըզտեղերս հրաւիրելով:

† Ըզծնեալն ի սըրբոյ կուսէն ընկալցուք ի սիրտըս մեր հաւատով. որպէս երբեմն ի գիրկսըն Սիմէոնին : Օրհնեսցուք զառաքեալըն ի Հօրէ. որ ի խանձարուրըս պատեցաւ վասըն մեր. եւ փըրկեաց ըզմեզ յանիծիցն Ադամայ :

Ծն. Որ յէութեանդ ես ընդ Հօր և սուրբ Հոգւոյն անըսկիզբըն Որդի. խոնարհեցար ի հայրական ծոցոյ. մարդ եղեալ մարմնացար ի կուսէն. բառնալով զյանցթումըն մահու յանցանաց նախահօրըն. Քեզ երգեմք ընդ զօրըս հրեշտակացն. ի մէջ հովուացն, օրհնեալ ես Քրիստոս նախայաւիտեան Բանդ : Այսօր ծընար որ ի Հօրէ յառաջ քան զյաւիտեանս Որդի. ճառագայթ փառաց և ծագումըն յանմեկնելի լուսոյն. մատաղագուշակ տեսլեամբըն յայրին իջեւանի եւ ի մըսուր յանբանից բազմեալ. Քեզ : Թագաւոր փառաց Քրիստոս և արարիչ բոլորից. Աստուած հըզօր իշխան Հայր հանդերձեալ լուսոյն. մանուկ երեւեալ այսօր անփոփոխելիդ ի յէութեան. Քեզ :

Ծն. Ամենիմաստ ամենից Հայր բազմագեղ. խնամող ստեղծող եւ Տէր բոլորից. անեղ եւ էից էակ զոր միշտ օրհնեն. դասք անմարմնականացըն յաւէժաբար հընչմամբ : Որ կերպարան և կնիք Հօր առեալ վասըն մեր ծառայի կերպ ի կուսէն. որ էին ի յաթոռ փառաց անտես վերնոցն. ի յայրին իջեւանի եւ ի մըսուր յանբանից բազմեալ : Զի ի կուսէն մարմնացեալ Բանն եկայք ժողովուրդք ընդ հովիւսըն բարեբանեսցուք եւ ընդ մոգուցն երկրպագեսցուք ընդ երկնային զօրսն երգեսցուք փառք ի բարձունս Աստուծոյ :

Ծն. Զահաւոր բարբառըս վերնոցըն հոգեւոր հընչմամբ երգով ընկալեալ հովուացն օրհնէին ըզծընունդ.

եւ ընծայումն յանմեկնելի լուսոյն։ Հրեշտակապե-
տին աւետեօքն ընթացեալք ի յայրն. աւետին զի նա-
տայեալ էր անանունն սերովբէից. Մանուկ եղեալ
յանբաւնից մնայր։ Դիմեալ մոգուցն ընդ փայլումն ա-
ստեղն. սա զԱստուած գուշակեալ լինի. զի ի տանէ
մարմնացելոյն ժամանեալ. Նմա մատուցանելով եր-
կրպագութիւն։

ԾՆ. Որում լեր Աստուածածին յոյս և փրկութեան
մայր. ընդ քեզ զընդունող լուսոյ մեծացուցանեմք։
Ընդ քեզ լուսոյ մայր և կոյս, ընդ քեզ զանձրեւ կե-
նաց աստուածային. ձայնիւ ցնծութեամբ մեծացու-
ցանեմք։ Մայր սուրբ անարատ լուսոյն. հրեշտակային
օրհնութեամբ պատուեալ ընդ քեզ մեծացուցանեմք։

ՄՏ. Սուրբ զԱստուածածինն. օրհնութեամբ մե-
ծացուցանեմք։ Աւետաւոր հրեշտակն աւետարանէր.
ընծընեալ փրկիչն ի սուրբ կուսէն։ Աւէ ուրախ
լեր բերկրեալդ. քանզի Տէր տերանց է ընդ քեզ։

ԾՆ. Բարեխօսեա. անդադար առ Որդի քո և Աս-
տուածը մեր ծընող և աղախին Տեառն։ Ի բարեխօ-
սութիւն փութացիր մեզ սուրբ Աստուածածին. առ ի
փրկել ըզժողովուրդս ի մեղաց եւ յապականութենէ։
Ապաւինիմք ի քո բարեխօսութիւնդ Աստուածածին
Մարիամ. մայր Տեառն եւ կոյս սուրբ հարսն Երկնից
և դուռըն կընքեալ զոր մարգարէն ետես։

ՀԳ. Որ համագոյդ ես Հօր և Որդւոյ. անճառաբար
բղխումն ի միշտ էին. այսօր բղխեցեր ջուր կեն-
դանի յԵրուսաղէմ ‖ Հոգի Աստուծոյ ողորմեա.
Որ արարչակից ես Հօր և Որդւոյ. որով կենդանա-
ծնեալք ի ջուրս արարածք. այսօր որդիս Աստու-
ծոյ ծնանիս ի ջրոյ Հոգի։ Որ փառակից ես Հօր

ւ Որդւոյ. եւ քըննես ըզխորս Աստուծոյ. առյածր խորագէտս իմաստից զիմաստս աշխարհի սրբեր Հոգի:

Հն. Արարչագործ Աստուած. զարարածըս քո մի անտես առներ. այլ գըթա ի | Նընջեցեալըն ըմեր եւ հանգո ընդ սուրբըս քո. ի խորան քում սըրբո-ղաց: Արարչակից Հօր Որդի. ի միւսանգամ քո զալըստեանն. անդամապարտ պահեա ըզնընջեցեալ-սըն: —Փառք Հօր: Կենդանարար սուրբ Հոգի. յոր-ժամ նորոգես զերեսս երկրի. նորափետուր զարդա-րեա ըզնընջեցեալսըն:

—Այժմ և միշտ: Ուրախ լեր անապատ ծարաւի. եւ ծաղկեա հաւատով երանութեամբ յայսըմհե-տէ. քանզի Քրիստոս յոյս յայտնեցաւ հեթանոսաց:

Ալէլուիա ծննդեան է յայնէն:

---

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԴԿ

Որ յանճառելի ծոցոյ Հօր յէութենէ ծագեցար արեգակն արդարութեան անըսկիզբն Աստուած. | Զքեզ ընդ հըրեշտակըս բարեբանեմք Աստուած հայրըն մերոց: Որ խոնարհեցար յերկնից փըրկել զարարածս անյեղապէս. մարմնացար ի կուսէն էակից Բա-նըդ Հօր. զքեզ: Որ ի խանձարուրըս պատեցար ան-նեղանելիդ ոչ մեկնելով յանքըննելին փառաց Հօր էակցից սուրբ Հոգւոյն. զքեզ:

Գ. ԸզՏէր | Միաբանութեամբ օրհնեցէք եւ առաւել բարձր արարէք ըզնա յաւիտեան: Զառաքեալըն ի Հօրէ զԲանն և զմարմնացեալըն ի կու-սէն զանքըննելին. միաբանութեամբ: Ըզծնեալըն ի սըրբոյ կուսէն և յանբաւնից մըտուր երեւալ ըզհաց

կենաց․ Միաբանութեամբ օրհնեսցուք եւ առաւել բարձր արարէք ըզնա յաւիտեան։ Զերկըրպագեալն ի մոգուց եւ զմերկըրտեալն ի Յորդանան ի Յովհաննէ․ միաբանութեամբ։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԴԿ

Աստուածածին եւ սրբուհի․ որ ըզԲանն Աստուած անսերմն յղութեամբ յարգանդի կրեցեր․ Անդադար մեծացուցանեմք։ Զքեզ մայր կուսութեան եւ յղութեան լուսոյ․ եւ առագաստ անճառելոյ բընակողին ի քեզ փառաւորեալ Բանին․ Անդադար։ Քեւ լուծան կնիք դատապարտութեանն․ Եւ քեւ կանգնեցաւ մեղուցեալ մայրըն գլորեալ․ վասն որոյ ըզքեզ Աստուածածին եւ կոյս․ Անդադար։

ՈՂՈՐՄԵԱ ԴԿ

Որ էրն ի սկըզբանէ առ Աստուած եւ Աստուած Բանն․ կերպարան Աներին եւ համագոյ սուրբ Հոգւոյն․ ի վերջին աւուրըս ծանուցեալ մարմնանալ յանձն առնու ի կուսական յարգանդէ․ Վասն փըրկութեան ազգի մարդկան։ Յառաջ քան զյաւիտեանս Որդի նախայաւիտեան․ այսօր յերկրի երեւեալ․ Աստուած եւ մարդ կատարեալ․ խանձարրովք պատեղանի և դնի յանբանից մըսուր․ Վասն։ Ի Բեթղեհէմ Հրէաստանի երեւի արդարութեան արեգակն․ այսօր երկըրպագի Անեղն յարեւելից եկեալ մոգուց․ եւ փառաբանի յերջանիկ ի բացօթեայ հովուաց․ Վասն։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԴԿ

Որ անտես եւ անքըննելին քառակերպեցըն վեհագոյն․ ի փըրկել ըզմեզ եկեալ անմահից Թագաւոր․ օրհնութիւն առաքողին։ Առաքէ հրեշտակապետն առ սերովբէն հողեղէն․ ասէ Տէրն եւ արարողն մա-

քեա՛լն ի՛ Հօրէ՛ մա՛րմնանայ ի՛ քէ՛ն փրկո՛ղն։ Մըկըր-տի ի Յորդանան վըկայելով Հօր և Հոգւոյ. Ովսաննա՛ ի բարձունս երգէին մանկունքն օրհնութիւն որդւոյ դաւթի։

Առաւօտու երգ. Արեգակն արդար։ Ի վայելչութիւն փառ։

Քարոզ Մայր սուրբ։

ՍԱՂՄ. ԾԹ. Յաղթ։ Կց. Ի վայելչութիւն սրբոց։ 1149։

Ալէլուիա, Օրթի

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Յովհաննու։ Ա. 18։

Զհայրն լուսոյ

ԶԱստուած ոչ ոք ետես երբեք, բայց միածինն Որդի որ է ի ծոց Հօր՝ նա պատմեաց։ Եւ այս է վկայութիւնն Յովհաննու, յորժամ առաքեցին առ նա Հրեայքն յԵրուսաղեմէ քահանայս և ղեւտացիս, զի հարցցեն զնա՝ թէ դու ո՞ ես։ Եւ խոստովան եղև և ոչ ուրացաւ, խոստովան եղև եթէ ես ոչ եմ Քրիստոսն։ Եւ հարցին զնա. իսկ ո՞վ ես դու, Եղիա՞ ես։ Եւ ասէ. ոչ եմ։ Իսկ մարգարէ՞ն ես դու։ Պատասխանի ետ, թէ ոչ։ Իսկ ասա մեզ, դու ո՞վ ես, զի պատասխանի տարցուք որոց առաքեցինն զմեզ. զի՞ ասես վասն քո։ Ասէ. ես ձայն բարբառոյ յանապատի, ուղիղ արարէք զճանապարհն Տեառն, որպէս ասաց Եսայի մարգարէ։ Եւ որք առաքեցանն՝ ի փարիսեցւոց անտի էին. հարցին զնա՝ և ասեն. իսկ զի՞ մկրտես՝ եթէ դու չես Քրիստոսն, և ոչ Եղիա, և ոչ մարգարէն։ Պատասխանի ետ նոցա Յովհաննէս և ասէ. ես մկրտեմ զձեզ ջրով. ի միջի ձերում կայ զոր դուքն ոչ գիտէք, որ զկնի իմ գալոցն է, որում չեմ արժանի՝ եթէ լուծից զխրացս կօշկաց նորա։ Այս ի Բեթաբրա եղև յայն կոյս Յորդանանու, ուր էրն Յովհաննէս և մկրտէր։ 28։

Արարչա։ Քար. Խնդրեմ։ Կեցո. Յաղթ։ Աղ. Քում ամեն։

---

## Յ Ե Ր Ե Կ Ո Յ Ի Ն

ՄԵՍԵԴԻ ծննդեան. Մեծացուցէ անձն։ Զի հայեցաւ։

Քարոզ Մայր սուրբ։

ՀԱՄԲԱՐՁԻ ԳԶ

Անսկզբնական տեսիլ փառաց քոց։ Վեց ձայն։ 1168։

Քար. Սուրբ զԱստուած։ Կեցո. Յաղթ։ Աղ. Ընկալ Տէր։

---

Digitized by Google

# Զ· ՕՐ ՅԱՅՏՆՈՒԹԵԱՆ

## Ի ԳԻՇԵՐԻ

### ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԳԶ

Անըսկըզբնականն տեսիլ փառաց քոց տըւող որ մեզ հրաշագործեցաւ երեւելով անճառաբար ծընընդ· եանն այսօր ցընծութիւն յայտնեցաւ տիեզերաց ։ Անժա· մանական հոգեղինացն երգանկցելով · բոցեղէն փայլմամբ թափանցիկ հրածին ամպոյն սիւն գործեալ յայրին· այսօր դասակից եղեն հովիւքըն հանդիսի վերնոց Ընդհանուր ծաւալեցաւ ծագումըն լուսոյ · մոգուցն հետեւելով աստեղըբըն գուշակեալ գծընունդ յայրին· անդ ժամանուցանէին զընծայս աստուածային ծնընդեանն ։

† Որ յէութեանդ ես ընդ Հօր և սուրբ Հոգւոյն անը· կիզբն Որդի · խոնարհեցար ի հայրական ծոցոյ · մարդ եղեալ մարմնացար ի կուսէն · բառնալով զյանցանս մահու յանցանաց նախահօրըն · Ի քեզ երգեմք ընդ զօրըս հրեշտակացն · ի մէջ հովուացն , օրհնեալ ես Քրիստոս նախայաւիտեան Բանդ ։ Այսօր ծընար որ ի Հօրէ յառաջ քան զյաւիտեանս Որդի · Ճառագայթ փա· ռաց և ծագումըն յանմեկնելի լուսոյն · աստղագուշակ տեսլեամբըն յայրին իջեւանի եւ ի մըսուր յանբաւից բազմեալ · քեզ ։

Ծն · Ըղձնեալըն ի սըրբոյ կուսէն ընկալցուք ի սըր· տըս մեր հաւատով . որպէս երբեմն ի գիրկըս Սիմէոնին ։ Օրհնեսցուք զառաջեալըն ի Հօրէ · որ ի խոն· ձարուրըս պատեցաւ վասըն մեր · եւ փըրկեաց ըզ· մեզ յանիծիցն Ադամայ ։ Ուրախ լեր անապատ ծա· րաւի · եւ ծաղկեա հաւատով երանութեամբ յայ· սըմհետէ · քանզի Քրիստոս յոյս յայտնեցաւ հեթա· նոսաց ։

Տն. Աստուածածին երկնային դուռն աստուածային ձայնիւն աւետարանէր հրեշտակն. Ուրախ լեր բերկրեալդ Տէր ընդ քեզ: Ի քերովբէս բազմեալ ընդ Հօր անապականաբար բնակիլ հաճեցաւ ի քում յորովայնի. ուրախ: Որ բոցեղէն սրովբէիւք շըրջափակեալ պահիւր. այսօր ի մէջ մարդկան ի գիրկս հողեղինի յայտնեալ ուր:

Տն. Լոյս լուսոյ մայր. եւ կենարար Բանին բնակարան. Քեզ երանիցեն ազգ եւ ազինք ամենայն: Անեղծողին մայր. եւ հնութեան կերպի նորոգողին. քեզ: Լոյս ծագեցաւ ի քէն. Նըստելոցս ի խաւարի. քեզ:

Տն. Անըսկըզբնական Բանին Հօր բընակարան. տաճար եւ առագաստ տեղի անտանելի լուսոյն. Զքեզ ըմեծացուցանեմք արըժանապէս երգով Աստուածամայր եւ կոյս: Յորժամ կենդանատեղծեալք յանեղէն հաստեցան ամենայն եղականքս. անմարմնապէս տըղայացաւ յորովայնի քում. եւ ծընաւ առ ի քէն մարմնացեալ Աստուածն ըստ բոլորից. զքեզ: Յորժամ զարհուրեալ դողային դասք վերին զըւարթնոցն. տըղայապէս առընկալեալ բարձեր ի գիրկս. եւ արբուցեր որպէս մայր ըստացողին ըզքեզ ըզկուսական քո սուրբ ըզկաթն. զքեզ:

Տն. Որ տարար ըզԲանն Աստուած յարգանդի քում. եւ ծընար ըզնա մարմնով ապրեցուցիչ Աստուածածին. բարեխօսեա կեցուցանել ըզմեզ: Հոգւոյն սրբոյ հովանացեալ զքեւ. Աստուածածին մարմնացեալ Հօր հաճութեամբ. զՈրդին միածին մեզ ի փըրկութիւն: Զանարատն օրհնեսցուք զԱստուածածինն որ կոյս մընաց յետ ծընընդեան. եւ տարաւ յորովայնի զանտանելին

ամենեցուն. զհամաբնակիցըն Հօր եւ ամենասուրբ Հոգւոյն։

ՏՆ. Բարեխօսութեամբ սուրբ Աստուածածնին. գո-հեսցէ զեկեղեցի իւր սուրբ. եւ ի միւսանգամ գա-լստեան իւրում նորոգեսցէ ի փառս։ Այլ մեք ձայնի վերնոց փառաւորեսցուք ընդ քեզ Քրիստոս. որ համագոյ ես Հօր և սուրբ Հոգւոյն. զի միաբանեսցես զեկեղե-ցի քո սուրբ պահելով ի խաղաղութեան։ Զի ի քէն ցընծութիւն ծընաւ տիեզերաց նախայաւիտեան բան. փառակից Հօր և սուրբ Հոգւոյն. ընդ նոյն անդադար ա-ղաչեմ վասն անձանց մերոց։

ՀԳ. Հոգիդ ճշմարիտ. որ զաստուածային ըղձա-մանսըն քո զաւածըն դաւթեան լուսցեր. առաքեցանելով աշակերտացն ըզպայծառութիւն քո ի սուրբ վերնա-տունն. ողորմեա։ Որ առաքեցար ի Հօրէ. կենդա-նարար վըտակ և լոյս ճշմարիտ. առաքեցանելով նո-քօք որդւոց Սիովնի զաւղխըս փառկութեան. ողոր-մեա։ Որ կատարեցեր ըզփառս ցանկութեան առաքելոց նոցա. որք ըսպասեալ մընային մեծի զալըստեան քո ի սուրբ վերնատունն. ողորմեա։

ՀՆ. Արարչագործ Աստուած. որ յոչընչէ գոյացու-ցեր զերկինս եւ զերկիր. օրհնեմք ըզքեզ. որ հանգուցիչդ ես նընջեցելոց Հայր ամենակալ։ Բանդ Աստուած և համագոյ փառաց Հօր պատկեր. գովեմք ըզքեզ որ յարութիւնդ ես ննջեցելոց Որդիդ միա-ծին։ — Փառք Հօր։ Աղբիւր անըսպառ յորդէ բղ-խի տիեզերական շընորհք. բարեբանեմք ըզքեզ. որ նորոգողդ ես ննջեցելոց Հոգիդ ճշմարիտ։

— Այժմ և միշտ։ Թագաւոր փառաց Քրիստոս և արա-րիչ բոլորից. Աստուած հզօր իշխան Հայր հանդերձ-

Digitized by Google

ձեալ լուսոյն. մանուկ երեւեալ այսօր անփոփոխելիդ ի յէութեան. քեզ երգեմք ընդ զօրըս հրեշտակացն. ի մէջ հովուացն, օրհնեալ ես Քրիստոս Նախայաւիտեան Բանդ։

Ալէլուիա Ծննդեան է յայնէն։

### ՅԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԴԿ

Որ խոնարհեցար ի հայրական ծոցոյ բընակիլ յարգանդի կուսին ‖ Աստուած հարցըն մերոց։ Որ գըթացար յերկիր և ծնար անախտ ազատելով զախտի ծըննունդս Աստուած։ Բարերանեմք զէակիցըդ Հօր և Հոգւոյն անդադար հոգեւոր երգով Աստուած։

Գ. ԸզՏէր Զառաքեալն ի Հօրէ լոյս իմաստութեան և բան. զէակիցըն Հօր եւ Հոգւոյն. ‖ օրհնեցէք եւ բարձր արարէք։ Ըզծնեալն ի սրբոյ կուսէն զխոստովանեալ թագաւորն. զերկրպագեալն ի մոգուց. օրհնեցէք։ Որ իջանելով ի ջուրսըն սրբեաց զՅորդանան. եւ ըզմըկըրտեալն ի Յովհաննէ. օրհնեցէք։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԴԿ

Որ զանճառելին ծընար. սուրբ Աստուածածին կոյս. ‖ օրհնեալ ես յաւիտեան։ Որ զարարչակիցըն Հօր. զիսկըզբանէ Բանն Աստուած. յորովայնի քում կրեցեր. օրհնեալ։ Զքեզ Եզեկիէլ տես. երկնային դուռն և հարսն անփորձ. օրհնեալ։

ՈՂՈՐՄԵԱ ԳԿ

Հրաշափառ ծընունդ քո ի սուրբ կուսէն. այսօր ցուցաւ ազգի մարդկան. զանըսկըզբնակից Բանդ էակից Հօր։ Յայտնութեամբ քո Տէր յընծայեցաւ երկիր. եւ նորոգեալ եղեւ Ադամ. յառաջին յանցանաց

Digitized by Google

ի մեղաց իւրոց ։ Դասք հովուացն յերկրի փառաւորէին. ընդ քո ամենակեցոյց գալուստդ. որ երևեցար քո արարածոց ։

ՏԷՐ ՑԵՐԿՆԻՑ ԳԿ

Այսօր յայտնեցաւ մեզ. բարձրեալըն բազմեալ Բանըն յանբանից մըսուր. զաւծծուն և երկնաւոր հաց ։ Այսօր ցընծան զուարթունք երկնից. տեսանելով զահաւոր զահանգին և զհրաշալի ծընունդ. որ լուծմյս աշխարհի ցուցաւ ։ Ընդ իշխանել զուարթնոցն ի փառաբանութիւն. տեսանէին ամպ լուսոյ սիւն գործեալ ի հրալից վիմին. զաւծմք երգէին հովուացն ։

Առաւօտու երգ. Արեգակն արդար ։ Ի վայելչութիւն փառ.
Քաղող Մայր սուրբ ։
ՍԱՂՄ. ԾԹ. Յայտնեա ։ ԿԸ. Ի վայելչութիւն սրբոց ։ 1149 ։

Ալէլուիա, Օրթի

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Յովհաննու ։ Ա. 29 ։
Վասն մկրտութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ։
Ի վաղիւ անդր տեսանէ զՅիսուս զի գայր առ ։ 788 ։
Արարչական ։ Քոյ. խնդր ։ Կեցո. Յայտնեա ։ Աղ. Քումմ ։

---

ՑԵՐԵԿՈՑԻՆ

ՄԵՍԵԴԻ ծննդեան. Տէր ասաց ։ Ընդէ՞ր խռովեցան ։
Քաղող Մայր սուրբ ։

ՀԱՄԲԱՐՁԻ ԲՁ

Անեղանելի բնութիւն որ յէութեանդ ։ Ինն դասն ։ Ի Հայր ։
Ջնջէ Քոյ. Սուրբ զԱստ ։ Կեցո. Յայտնեա ։ Աղ. Ընկալ ։

---

# Է. ՕՐ ՅԱՅՏՆՈՒԹԵԱՆ

## Ի ԳԻՇԵՐԻ

ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԲՁ

Անեղանելի բնութիւն որ յէութեանդ եւ ընդ

Հօր . ծնար ի սրբոյ կուսէն . ‖ Զքեզ բարեբանեմք արարչակից Հօր ։ Անճառելի արարողդ որ վասն մեր մարմնացար . եւ ցնծութիւն աշխարհի յայտնեցար . Զքեզ ։ Մկրտեցար ի Յորդանան ի Յովհաննիսէ աղաւնակերպ սուրբ Հոգւոյն . վկայեալ երկնային ձայնիւն . Զքեզ ։

✝ Բանն առաքեալ ի Հօրէ որ վասն մեր մարմնացաւ . եւ ցնծութիւն աշխարհի յայտնեցաւ . ‖ Զքեզ բարեբանեմք Աստուածածին կոյս ։ Զի որում ոչըն հանդուրժէին բոցանշոյլ սերովբէքն . նա ընկալեցաւ ի քում յորովայնի . Զքեզ ։ Յորմէ սարսեալ դողային փայլակնացայտ ի լուսոյն . ի գիրկս քո ըզնա ընկալար . Զքեզ ։

✝ Լոյսդ որ ի Հօրէ առաքեցար յորժամ իջեր ի յերկնից . եւ մարմնացար ի սրբոյ կուսէն . ‖ Դու ես գառն Աստուծոյ եւ Որդի Հօր ։ Այսօր յայրին ընծայեցար Փրկիչ . եւ ի մոգուցն երկրպագեցար . եւ հովուացըն տեսեալ աւետին . Դու ես ։

ՏՆ . Զքեզ Հայր յառաջ քան զյաւիտեանս բարեբանեն զաւք անմարմնոց հրեշտակաց . ձայնիւ երգով գոչեն եւ աղաղակեն . ‖ Աստուած յԱստուծոյ եւ Տէր տերանց Փրկիչ գոլով ։ Առաքեցեր զքո Միածինդ մարմնանալ ի սուրբ կուսէն . եւ անարատ ծնանիլ յորովայնէ անապական . բանալով ըզմեր նեղութիւնս . Աստ ։ Շնորհք բարի յԵրուսաղէմ երեւեցաւ հեթանոսաց . զի արարիչն յաւիտենից տղայ եղեալ յորդեգրութիւն կենաց կոչէ . Աստուած ։

ՏՆ . Ուրախացիր Սրբուհի Գաբրիելի աւետեօքն . որ քարոզեացն ըզգալուստ աստուածային Տեառն ի յերկնից ։ Ողջոյն ընդ քեզ Մարիամ ի քեզ սուրբ Հոգին

եկեղեցւ. Եւ զօրութիւն Բարձրելոյն է վերայ քո հովանացի: Որ ծնանելոցն է ի քէն Իսրայէլի առաջնորդ. Եւ ընդհանուր քարոզէ Աստուած հզօր անճառ Բանն:

ՏՆ. Անկանիմք առաջի քո Աստուածածին. Եւ աղաչեմք զի զանարժանս ընկեալս: Բարեխօսեա վասն անձանց մերոց. Եւ աղաչեա զՄիածինն Որդի. Փրկել զմեզ ի փորձութենէ. Եւ յամենայն վտանգից մերոց:

ՏՆ. Սուրբ Եւ Աստուածածին Մարիամ ցանկալի կուսից եւ պարծանք ազգի մարդկան. Մայր եւ աղախին մեծացուցանեմք: Անկէզ մորենի եւ տապանակ ընդհանուր լուսոյն. անապատ եւ անխախտելի կուսութեան մայր: Խորհուրդ կենաց Եւ մայր կենդանութեան եւ ռադաստ հրափայլ ծաղկամբ մայր:

ՏՆ. Բարեխօսեա վասն մեր Աստուածածին Մարիամ. որ ծնար զՏէր Աստուած որ հովուէրն զԻսրայէլ. ամենազօր ըզքանչելի փառօքն իւրովք: Ի քեզ եմք ապաւինեալ որ մայրդ ես եւ աղախին Քրիստոսի լեր բարեխօս վասն մեր. զի զանձինս Տեառն կարդասցուք եւ ըզքեզ մեծարեալ պատուեսցուք: Որ ըզհուրն Աստուած յորովայնի քում ընկալար. Եւ ծնար անճառապէս զկենսագործողն ամենեցուն. բարեխօս ըզքեզ ունիմք որ երանեալդ ես ի կանայս:

ՀԳ. Սարսափելի հողմոյ նման ահեղագոչ առատի հնչմամբ. Երեւեցար ի վերնատանն Հոգիդ դասուն երկոտասան. որք առ ի քէն մկրտեցան որպէս զոսկի հրով մաքրեցան. Մաքրեա ի մէնջ ըզմեղս մեղաց եւ ըզգեցո ըզլոյս փառաց: Էջեր յերկիր աստուածաբար դատել զաշխարհս իշխանաբար. ընդ արդարութեան եւ

ընդ մեղաց և ընդ չարին դատապարտանաց. բացեր ըզ-
գանձդ անճառելական պարգեւս ետուր որդւոց մարդկան.
Մաւքրեա ։ Սէրն է սիրոյ զսէրդ առաքեալց յինքըն
զանդամս իւր քեւ յօդեաց. զեկեղեցի իւր զոր չի-
նեաց եօթըն սեամբ քո հաստատեաց. տընտես ի նմա
եդ զառաքեալսն եօթնեակ շնորհօք քո զարդարեաց.
Մաւքրեա ։

Հն. Ի ձայն փողոյ գալըստեան քո Տէր ամենայն հո-
գիք զարթիցեն. կալ ի դատաստանի քում Քրիստոս
Աստուած մեր ։ Յորժամ հընչէ բարբառն ահաւագին և
հարկանի փող յարութեան մերոյ. եւ մեք գոչելով ա-
սեմըք փառըք գալըստեան քո Տէր ։ — Փառք Հօր ։
Յորժամ առնես հատուցումըն Տէր և սուրբըք քո պար-
ծեսցին ի քեզ. եւ մեզ շնորհեսցես փըրկիչ կալ ի
յաջմէ քումմէ ։

— Այժմ և միշտ ։ Ի նմանութիւն աղաւնոյ տեսեալ
զհոգին սուրբ Յովհաննէս. ազդակէր ասելով. սա է
գառն Աստուծոյ եւ Որդի Հօր ։

Ալէլուիա Ծննդեան է յայնէն ։

---

### ՅԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԲՋ

Փառաւորեալ Աստուած սքանչելի մեծագործու-
թեամբ. եկիր ի փըրկել զարարածըս քո. ‖ Աստուած
հարցըն մերոց ։ Ծընար ի կուսէ անճառելի բանդ.
ի Հօրէ ոչ մեկնեցար օրհնեմք ըզքեզ անհասանելի
լոյս. Աստուած ։ Երեւեցար յաշխարհի որ իջեր ի
Յորդանան մըկըրտել ի Յովհաննէ. որ ըզջուրսըն սըր-
բեցեր սըրբեա զմեզ ի մեղաց մերոց. Աստուած ։

Գ. ԸզՏէր Ամենայն գործըք Տեառն օրհնեն ըզնա
անդադար. զանըսկիզբըն Աստուած զանյաղթելի զթա-

գաւորն ‖ օրհնեցէք զովեցէք . եւ բարձր արարէք ըզնա յաւիտեանս ։ Որ էին փառօք ի յերկինս . անըսկըզբնակից Որդին . եւ իջեալ ի յերկնից մարմնացաւ ի կուսէն . օրհնեմ ։ Ըզծնեալն ի սուրբ ի կուսէն . զեղեալըն յանբանից մըսուր . եւ զմըկըրտեալն ի սուրբ Յորդանան . օրհնեմ ։ Զէակիցըն Հօր եւ Որդւոյ ըզսուրբ Հոգին . զնորոգող և զանըսպառ աղբիւրն լուսոյ . որ լուսաւորեացն ըզմեզ . օրհնեցէք ։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԲՁ

Ըզկուսութիւնըդ քո Աստուածածին անարատ . զոր ոչ բոցակիզեաց հուր աստուածութեանըն մեծացուցանեմք ։ Որ յարգանդի քում անապականաբար բնակեցաւ . Քրիստոս Աստուած եւ փրկիչ . անձանց մերոց մեծացուցանեմք ։ Անհասանելի տէրունական յայտնութիւնն աշխարհի ծագեցաւ . անմատոյց լուսոյն երկըրպագեսցուք ։

ՈՂՈՐՄԵԱ ԲՁ

Խոնարհեցար ի բարձանց եւ մարմնացար ի կուսէն . որ նըստէիրդ ի քրովբէս արարիչդ արարածոց ։ Երկինք չէին բաւական փառաց անմահ անեղիդ . արգանդ կուսին ժուժկալեալ սասել ընդունել ըզգանձդ երկնային ։ Յորմէ սարսեալ սերովբէքն ոչ իշխէին մերձենալ . ի խանձարուրս պատեցար եւ եդար ի մըսուր յանբանից ։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԲՁ

Հրաշալի բարբառք երկնաւոր զօրացն . հընչմամբ օրհնէին զանմահ թագաւորութիւնն ։ Անճառ ծընունդըն փառօք երեւեալ . և աստղըն լուսապայծառ հաւանի էր յայրին ։ Բանըն բազմեալ յանբանից մըսուր . եւ մոգքըն հետեւէին ծագման լուսափայլ աստեղն ։

Digitized by Google

Առաւօտու Երգ. Արեգակն արդար ։ Ի վայելչութիւն փա ։ Քարոզ Մայր սուրբ ։
ՍԱՂՄ. ճԹ. Յոյնխ ։ կՑ. Ի վայելչութիւն սրբոց ։ 1149 ։

## Ալէլուիա, Օրթի

## Սրբոյ Աւետարանիս որ ըստ Յովհաննու ։ Ա. 35 ։

Վասն մկրտութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ։

Ի վաղիւ անդր կայր Յովհաննէս, և յաշակերտաց անտի նորա երկու. և հայեցեալ ընդ Յիսուսի՝ զի զգնայր, ասէ. ահաւասիկ Քրիստոս գառն Աստուծոյ ։ Լուան ի նմանէ երկու աշակերտքն՝ զի խօսէր, և գնացին զհետ Յիսուսի ։ Իբրև դարձաւ Յիսուս, և ետես զնոսա՝ զի երթային զհետ նորա, ասէ ցնոսա. զի՞նչ խնդրէք ։ Նոքա ասեն ցնա. ռաբբի, որ թարգմանեալ կոչի վարդապետ, ո՞ւր են օթեվանք քո ։ Ասէ ցնոսա. եկայք և տեսէք ։ Եկին և տեսին՝ ուր էին օթեվանք նորա. և առ նմա ագան այն օր, զի ժամ էր իբրև տասներորդ ։ Էր Անդրէաս՝ եղբայր Սիմովնի վիմի՝ մի յերկուց անտի, որ լուանն ի Յովհաննէ և գնացին զկնի նորա ։ Գտանէ սա նախ զեղբայր իւր զՍիմովն, և ասէ ցնա. գտաք զՄեսիա՝ որ թարգմանի Քրիստոս. սա ած զնա առ Յիսուս ։ Հայեցեալ ընդ նա Յիսուսի՝ ասէ. դու ես Սիմովն որդի Յովնանու, դու կոչեսցիս Կեփաս, որ թարգմանի Պետրոս ։ Ի վաղիւ անդր կամեցաւ ելանել ի Գալիլեա. գտանէ զՓիլիպպոս, և ասէ ցնա Յիսուս. եկ զկնի իմ ։ Եւ էր Փիլիպպոս ի Բեթսայիդայ, ի քաղաքէ Անդրեայ և Պետրոսի ։ Գտանէ Փիլիպպոս զՆաթանայէլ, և ասէ ցնա. զորմէ գրեաց Մովսէս յօրէնսն և մարգարէքն՝ գտաք զՅիսուս զորդի Յովսեփայ ի Նազարեթէ ։ Ասէ ցնա Նաթանայէլ. իսկ ի Նազարեթէ մա՞րթ ինչ իցէ բարւոյ իմիք լինել ։ Ասէ ցնա Փիլիպպոս. եկ և տես ։ Իբրև ետես Յիսուս ըզՆաթանայէլ զի գայր առ նա, ասէ վասն նորա. ահա արդարև իսրայելացի, յորում նենգութիւն ոչ գոյ ։ Ասէ ցնա Նաթանայէլ. ուստի՞ ճանաչես զիս ։ Պատասխանի ետ Յիսուս և ասէ ցնա. մինչչև էր Փիլիպպոսի կոչեցեալ զքեզ՝ զի էիր ի ներքոյ թզենւոյն, տեսի զքեզ ։ Պատասխանի ետ նմա Նաթանայէլ և ասէ. ռաբբի, դու ես որդի Աստուծոյ, դու ես թագաւորն Իսրայելի ։ Պատասխանի ետ նմա Յիսուս և ասէ. փոխանակ զի ասացի քեզ՝ թէ տեսի ի ներքոյ

Digitized by Google

Թզենւոյն՝ հաւատաս, մեծամեծս եւս քան զայս տեսցես։ Եւ ասէ ցնա. ամէն ամէն ասեմ ձեզ, տեսանիցէք զերկինս բացեալ, և զհրեշտակս Աստուծոյ՝ զի ելանիցեն և իջանիցեն ի վերայ որդւոյ մարդոյ։ 51։

Արարչա։ Քար. Խնդրես։ Կեցո. Յոյնխ։ Աղ. Քում ամեն.

---

### ՑԵՐԵԿՈՑԻՆ

ՄԵՍԵԴԻ Ծննդեան. Իջցէ որպէս զանձրև։ Աստուած զի։ Քարոզ Մայր սուրբ։

#### ՀԱՄԲԱՐՁԻ ԴՁ

Լոյս ի լուսոյ ի Հօրէ առաքեցար և։ Ինն տօն։ Ի Հօր։ Քար. Սուրբ զԱստուա։ Կեցո. Յոյնխ։ Աղ. Ընկալ Տէր։

---

# Ը. ՕՐ ՅԱՅՏՆՈՒԹԵԱՆ



### Ի ԳԻՇԵՐԻ

#### ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԴՁ

Լոյս ի լուսոյ ի Հօրէ առաքեցար եւ մարմնացար ի սուրբ կուսէն. զի վերստին նորոգեսցես զապականեալն Ադամ։ Դու Աստուած ի յերկրի երեւեցար և ընդ մարդկան շրջեցար. եւ փրկեցեր ըզտիեզերս յանիծիցն Ադամայ։ Քեզ ի յերկնից վըկայեալ Հօր քո ձայն. ասէ դա է իմ Որդի եւ սուրբ Հոգին ըզքեզ յայտնեաց աղաւնակերպ երեւմամբ։

† Ըզքեզ որ Հոգւով և հրով մաքրեցեր ըզմարդկան աղտեղութիւն. որպէս զԱստուած և ըզփըրկիչ ամենեքեան օրհնեսցուք։ Փրկիչն երեւեցաւ և զաշխարհս ապրեցոյց ի պատրանաց Թըշնամւոյն. որդեգրութիւն շնորհելով ի ձեռըն մըկըրտութեան։ Ջրով կիզու ըզմեղըս մեր այսօր. երեւեալ ապրեցուցիչն և զովացուցանէ զաշխարհս աստուածային ջըրովն։

† Ըզգըլուխս վիշապին Փըրկիչըն ջախջախեաց ի Յոր-

Digitized by Google

դանան ի գետ. և ինքեան իշխանութեամբ զամենե-սեան ապրեցոյց։ Զհին մարդըն նորոգելով փրկիչն ի մկրտութիւն գայ այսօր. զի զապականեալ ըզբնու-թիւնըս ջրով նորըս գործեսցէ անապական ըզգեստ փո-խարէն տալով մեզ։

ԾՆ. Ծագումըն հրաշալի որ անյայտ էր ի մէնջ. եւ Բանըն հայրական անըմբռնելի. հուր փայլակնա-ցեալ և ի մարմնի բնակեցաւ. անվընասս պահելով զարարածս ամենայն։ Ծագումըն հրաշագործ որ ի կու-սէն ծագեցաւ. ճառագայթելով զարարածս ամենայն. Երկինք ցընծային և երկիրս ուրախանայր. եւ Քրիստոս Աստուած ընդ մարդկան շըրջեցաւ։ Առ քեզ ապաւինիմք Ամենասըրբուհի. գերագոյն և հրաշալի եւ բաշխող բարութեանց. աղբիւր ես ծարաւեաց եւ հանգիստ աշխատելոց. եւ եղեր վերընկալ աստուա-ծային Բանին։

ԾՆ. Առաւօտ խաղաղութեան եւ արուսեակ զըւարթա-րար. այսօր Մարիամ սըրբուհին ի փառըս քո Քրիս-տոս ծագեաց մեզ լոյս յորդուոցն օրինաց. ‖ անդա-դար երգով սուրբք ըզքեզ ը միշտ մեծացուցանեմք։ Դրախտ աստուածային և արեւելք իմանալի. այ-սօր Մարիամ հրաշագեղ ծնեալ ի յԱննայէ ի մայ-րութիւն քո հրաւիրեալ Քրիստոս Որդի Աստուծոյ. ան-դադար։ Տապանակ ապրեցուցիչ և տաղաւար աբրա-համեան աստուածընկալ. այսօր Մարիամ լուսա-պայծառ միածին ծընունդ յայտնեալ ծնողաց ի ծնո-ղութիւն քո կոչեցեալ միածին Որդի Աստուծոյ. ան-դադար։

ԾՆ. Ուրախ լեր Մարիամ սուրբ Աստուածածին. զի ի տաճարին մաքրեցելոյ յանկարծակի եկըն Տէր. ըզքեզ

‖ օրհնութեամբ մեծացուցանեմք ։ Ուրախ լեր դուռն փակեալ ընդ որ ոչ ոք մտանել . բայց Տէր Աստուած Իսրայելի . ըզքեզ օրհ ։ Ուրախ լեր աղբիւր կենաց ջրոյն կենդանութեան . զոր ծարաւելոյ բնութեանս ետուր ի յարբումն . ըզքեզ օրհ ։

Ծն . Ըզքեզ օրհնութեամբ մեծացուցանեմք ։ Որ ըզԲանն Աստուած յարգանդի կրեցեր Սրբուհի անարատ . եւ անճառապէս ծնար ըզվերաձգողն երկնից . ըզքեզ ։ Որ էից լուսոյն արժանի եղեր բառնալոյ ի քո գիրկս . եւ արեգականն արդարութեան եղեր արեւելք . ըզքեզ ։

Ծն . Որ տարար յորովայնի զանտանելին ամենեցուն եւ ծնար անճառապէս . զՔրիստոս յոյս ազգի մարդկան . առ նա միշտ բարեխօսեա կեցուցանել ըզմեզ ։ Տեսին զայս իմանալի զօրութեանց . զԱստուած մարմնով առ ի քէն ծնեալ . իսկ եկեղեցի Որդւոյ քո Աստուածածին ըզքեզ խոստովանի . որ միայն կուսութեամբ ես մայր ։ Աստուածածին ապաւէն մեր եւ յոյս . բարեխօսեա առ Որդիդ քո միածին զի փրկեսցէ ըզմեզ ի հրոյն տանջանաց . եւ պարգեւեսցէ մեզ զերկնից արքայութիւնն ։

Հգ . Առաքելոց աղաւնոյ . իջմանելով մեծաձայն հնչմամբ ի բարձանց . ի նմանութիւն լուսոյ փայլման հրազինեաց անկիզելի զաշակերտսն . մինչդեռ նստէին ի սուրբ վերնատանն ։ Աննիւթական աղաւնի . անքննելի որ քննէ ըզխորս Աստուածոյ . զոր առեալ ի Հօրէ պատմէ զահաւորն եւ ըզմիաւանդամ զաշակերտսն . զոր քարոզեցին համագոյական ։ Օրհնութիւն ի բարձունս . եղողին ի Հօրէ Հոգւոյն սրբոյ . որով առաքեալքն արբեցան անմահական բաժակաւն . եւ հրաւիրեցին զերկիրս ի յերկինս ։

Digitized by Google

Հն. Անըսկիզբն Աստուած սկիզբն արարչութեան ի հօղոյ ստեղծեր ըզմարդն առաջին գործել և պահել յանպատում ի կեանս. իսկ ի սուտնզանել հրամանի քո Տէր ըզվըճիռ մահու ի վերայ եդեալ. հող էիր անդրէն և ի հող դարձցիս. || Եւ այժմ աղաչեմ զատեղծողդ ամենից ընկալ եւ հանգո զհրաժարեալ հոգիս. յեօթնամատեղեան լուսեղէն խորանսն ուր ժողովքն են սրբոցն ի խաղաղութեան. հոգւով հեզութեամբ յերկնից բարութիւնսն: Ոսկի եղեալքս անպիտանացան. գեղեցկայարմար շինուածոյս քակտումն. իմաստունքս յիմարեցան ի յալեաց մեղաց որ ընկղմեցան. եւ այժմ:

— Փառք Հօր: Կոչողն եհաս վերին կոչողին կոչնատէրն ահեղ կոչողն ահաւոր. դատաւորն անաչառ դատաստանն արդար հրեշտակք անողորմ դատին զմեղաւորս. եւ այժմ:

— Այժմ և միշտ: Մըկըրտի Քրիստոս և սրբին ամենայն արարածք. եւ տայ մեզ թողութիւն մեղաց. Ջրով եւ Հոգւով վերասըրբելով ըզմեզ:

Ալէլուիա Ծննդեան է յոյնէն:

---

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

### ՀԱՐՑ ԱՁ

Տընօրինեցաւ յարգանդի կուսին իսկակից Հօր եւ սուրբ Հոգւոյն. Բանն առաքեալ ի Հօրէ. յաղագս նախաստեղծ մարդոյն. բանալով ըզյանցանս. || Ժողովուրդք օրհնեցէք զառաքեալն ի Հօրէ զԱստուած հարցըն ըմերոց: Նախայաւիտեան Որդին փառակից Հօր եւ սուրբ Հոգւոյն ի Յորդանան եկըն այսօր. մըկըրտիլ ի Յովհաննէ. կերպացեալ իմովս յաղագս իմ զնախահօրն եբարձ ըզմեղս. Ժողովուրդք: Մաքրողական պարգեւեցան շնորհք. աղաւնակերպ իջ-

մամբ սուրբ Հոգւոյն ջուրցըն սըրբութեան. եւ ձայն ի վերուստ վըկայեալ կըրկնակի ծնընդեամբ դա է Որդի իմ սիրելի. միաբան եւ մեք օրհնեսցուք. զառաքեալն ի Հօրէ զԱստուած հարցըն մերոց:

Գ. Ըզ Տէր օրհնեցէք || բարձր արարէք ըզնա յաւիտեան: Արարիչն երկնի եւ երկրի. Աստուած եւ մարդ գոլով. երեւեալ ի հոսանացըն Յորդանանու. աստուածախառնըն մաքրելով. լըւաց ըզտիեզերս ի մեղաց. բարձր: Միաբանութեամբ օրհնեցէք քահանայք եւ ժողովուրդք զամենասուրբ զԵրրորդութիւնն. ըզհամագոյ եւ ըզմի Աստուածութիւնն. բարձր:

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԱՁ

Յանճառ փառաց խոնարհեցար ի մեր բնութիւնս. Բանդ Աստուած եւ մարմնացար ի սրբոյ կուսէն: Եւ ծնար ի սուրբ կուսէ անապականն մարմնով. ըզքեզ անդադար բարեբանեալ մեծացուցանեմք: Այսօր զեկեալդ ի փրկութիւն ազգի մարդկան. միաբանութեամբ ամենեքեան մեծացուցանեմք:

ՈՂՈՐՄԵԱ ԱՁ

Պատկերակից եղեր հողեղէն բնութեանըս տընօրինեցար յարգանդի կուսին Բանդ Աստուած ըզմերս վերանորոգել պատկեր: Մերկացեալ ի ճաշակմանէ նախաստեղծին ըզփառս. միւսանգամ վերըստին շնորհելով. ըզմերս վերանորոգել ի փառս: Մըկըրտեալ ի Յորդանան ի Յովհաննէ աստուածային բնութեամբ մարմնովըն զոր ի մէնջ էառ. ըզմեզ լուսաւորելով աստուածային ծնընդեամբ:

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԱՁ

Զանբաժանելի ըզԲանըն Հօր. եւ զանըսկիզբըն Նա-

ռա զՈրդին. որ ի Յորդանան այսօր ըզմեր մեղըս մեռոյց. եւ զաշխարհըս լուսաւորեաց. ‖ բարեբանելով ըմի ձայն յաւիտեան: Որ ի Հօրէ վըկայեալ Որդի. յայտնեալ, Հոգին իջեալ ձեռնադրէր կարապետն. զի և մեք օրհնեսցուք զերրորդութիւն միասնական. բարեբանելով: Որ է հրեշտակաց օրհնաբանեալ Աստըւած. ի հասանելն Յորդանանու տեսեալ Յովհաննէս ասէր. ահա գառն Աստուծոյ որ վըկայի ի սուրբ Հոգւոյն. զոր օրհնեսցուք ըմի ձայն յաւիտեան:

Առաջնորդ Երգ. Արեգակն արդար: Ի վայելչութիւն փա:
Թ—րող Մայր սուրբ:

ՍԱՂՄ. ԾԹ. Յաւելուած: 48. Ի վայելչութիւն սրբոց: 1149:

## Ալէլուիա, Օրթի

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու: Գ. 1:

Վասն մկրտութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի:

Ի հնգետասաներորդի ամի տէրութեանն Տիբերեայ կայսեր, ի դատաւորութեան Հրէաստանի Պիղատոսի Պոնտացւոյ, և ի չորրորդապետութեան Գալիլեացւոց Հերովդի, և ի Փիլիպպոսի եղբօր Նորա չորրորդապետութեան Իտուրացւոց և Տրաքոնացւոց աշխարհին, և ի չորրորդապետութեան Լիւսանեայ՝ աբիլենացւոց, և ի քահանայապետութեան Աննայի և Կայիափայ, եղև բան Աստուծոյ ի վերայ Յովհաննու որդւոյ Զաքարեայ յանապատի անդ: Եւ եկն յամենայն կողմն Յորդանանու՝ քարոզել մկրտութիւն ապաշխարութեան ի թողութիւն մեղաց: Որպէս և գրեալ է ի գիրս պատգամաց Եսայեայ մարգարէի. ձայն բարբառոյ յանապատի, պատրաստ արարէք զճանապարհ Տեառն, և ուղիղ արարէք զշաւիղս Նորա. ամենայն ձորք լցցին, և ամենայն լերինք և բլուրք խոնարհեսցին, և եղիցին դժուարինքն ի դիւրինս, և առապարքն ի հարթ ճանապարհս. և տեսցէ ամենայն մարմին զփրկութիւն Աստուծոյ: Եւ ասէ ցժողովուրդսն ելեալս մկրտել ի Նմանէ. ծնունդք իժից, ո՞ եցոյց ձեզ փախչել ի բարկութենէն որ գալոց է: Արարէք այսուհետև պտուղս արժանիս ապաշխարութեան: Եւ մի սկսանիցիք ասել՝ եթէ ունիմք հայր զԱբրահամ. զայս ա-

սեմ ձեզ, եթէ կարող է Աստուած ի քարանցս յայսցանէ յարուցանել որդիս Աբրահամու։ Բայց ահաւասիկ տապար առ արմին ծառոց կայ. ամենայն ծառ որ ոչ առնէ պտուղ բարւոք, հատանի և ի հուր արկանի։ Հարցանէին զնա ժողովուրդքն և ասէին. իսկ արդ զի՞նչ գործեսցուք։ Պատասխանի ետ և ասէ ցնոսա. որ ունիցի երկուս հանդերձս՝ տացէ զմին այնմ որ ոչ գուցէ, և որ կայցէ կերակուր՝ նոյնպէս արասցէ։ Եկին և մաքսաւորք մկրտել, և ասեն ցնա. վարդապետ, զի՞նչ գործեսցուք։ Եւ նա ասէ ցնոսա. մի ինչ աւելի քան զհրամայեալսն ձեզ առնիցէք։ Հարցանէին զնա և զինուորքն և ասէին. և մեք զի՞նչ գործեսցուք։ Ասէ ցնոսա. մի զոք խուիցէք և մի զոք զրպարտիցէք, շատ լիցին ձեզ թոշակքն ձեր։ Մինչ ակն ունէր ժողովուրդն, և խորհէին ամենեքեան ի սիրտս իւրեանց վասն Յովհաննու՝ միթէ սա՞ իցէ Քրիստոսն։ Պատասխանի ետ ամենեցուն՝ և ասէ. ես մկրտեմ զձեզ ջրով. բայց գայ զօրագոյն քան զիս, զորոյ չեմ բաւական բառնալ զկօշիկս. նա մկրտեսցէ զձեզ Հոգւով սրբով և հրով։ Որոյ հեծանոցն ի ձեռին իւրում սրբել զկալ իւր, և ժողովել զցորեանն ի շտեմարանս իւր, և զյարդն այրեսցէ անշէջ հրով։ Բազում և այլ ինչ մխիթարութեամբ աւետարանէր ժողովրդեանն։ Բայց Հերովդէս չորրորդապետ յանդիմանեալ ի նմանէ վասն Հերովդիայ կնոջ եղբօր իւրոյ, և վասն ամենայն չարեացն զոր գործեաց Հերովդէս, յաւել և զայն ևս ի վերայ ամենայնի, և եդ ի բանտի զՅովհաննէս։ Եւ եղև ի մկրտել ամենայն ժողովրդեանն, և ընդ Յիսուսի մկրտելն և կալ յաղօթս, բանալ երկնից, և իջանել Հոգւոյն սրբոյ մարմնաւոր տեսլեամբ իբրև զաղաւնի ի վերայ նորա, և գալ ձայն յերկնից՝ որ ասէր. դու ես Որդի իմ սիրելի, ընդ քեզ հաճեցայ։ Եւ ինքն Յիսուս էր ամաց իբրև երեսնից սկսեալ, որոց որպէս և կարծէր որդի Յովսեփայ, որ Յակովբայն, որ Հեղեայն, որ Մատաթեայն, որ Ղեւեայն, որ Մեղքեայն, որ Յաննեայն, որ Յովսեփեայն, որ Մատթեայն, որ Ամովսեայն, որ Նաւումայն, որ Էսղեայն, որ Նանգեայն, որ Մաաթեայն, որ Մատաթեայն, որ Սեմեայն, որ Յովսեքեայն, որ Յովդայն, որ Յովնանայն, որ Ռեսայն, որ Զորաբաբելին, որ Սաղաթիելին, որ Ներեայն, որ Մեղքեայն, որ Ադդեայն, որ Կովսամայն, որ Ելմովդադայն, որ Երայն, որ Յեսուայն, որ Եղիազարայն, որ Յովրամայն, որ Մաա-

Ծայն, որ Ղեւեայն, որ Սիմէոնին, որ Յուդային, որ Յովսեփայն, որ Յովնանայն, որ Եղիակիմայն, որ Մեղեայն, որ Մեննայն, որ Մատաթայն, որ Նաթանայն, որ Դաւթին, որ Յեսսեայն, որ Ովբեդայն, որ Բոոսայն, որ Սաղմանայն, որ Նաասոնին, որ Ամինադաբայն, որ Արամայն, որ Ադմեայն, որ Առնեայն, որ Եսրովմայն, որ Փարէսին, որ Յուդային, որ Յակովբայն, որ Իսահակայն, որ Աբրահամուն, որ Թարային, որ Նաքովրայն, որ Սերուքայն, որ Ռագաւայն, որ Փաղեկայն, որ Եբերայն, որ Սաղային, որ Կայնանայն, որ Արփաքսադայն, որ Սեմայն, որ Նոյին, որ Ղամէքայն, որ Մաթուսաղային, որ Ենովքայն, որ Յարեդին, որ Մաղաղայելին, որ Կայնանայն, որ Ենովսայն, որ Սեթայն, որ Ադամայն, որ Աստուծոյն։ Եւ Յիսուս լի Հոգւով սրբով դարձաւ ի Յորդանանէ. և վարէր Հոգւովն յանապատ՝ աւուրս քառասուն փորձեալ ի սատանայէ. և ոչ եկեր, և ոչ արբ յաւուրսն յայնոսիկ, և ի կատարելն նոցա՝ քաղցեաւ։ Եւ ասէ ցնա սատանայ. եթէ որդի ես Աստուծոյ, ասա քարիդ այդմիկ՝ զի հաց լիցի։ Պատասխանի ետ նմա Յիսուս և ասէ. գրեալ է՝ եթէ ոչ հացիւ միայն կեցցէ մարդ, այլ ամենայն բանիւ Աստուծոյ։ Եւ հանեալ զնա ի լեառն մի բարձր՝ եցոյց նմա զամենայն թագաւորութիւնս աշխարհի ի վայրկեան ժամանակի. և ասէ ցնա սատանայ. քեզ տաց զայս ամենայն իշխանութիւն և զփառս սոցա, զի ինձ տուեալ է, և ում կամիմ՝ տամ զսա. արդ դու եթէ անկեալ երկիր պագանիցես առաջի իմ, քեզ եղիցի ամենայն։ Պատասխանի ետ նմա Յիսուս և ասէ. գրեալ է, երկիր պագցես Տեառն Աստուծոյ քում, և զնա միայն պաշտեսցես։ Եւ ած զնա յԵրուսաղէմ, և կացոյց ի վերայ աշտարակի տաճարին, և ասէ ցնա. եթէ որդի ես Աստուծոյ, արկ զքեզ աստի ի վայր. զի գրեալ է՝ եթէ հրեշտակաց իւրոց պատուիրեալ է վասն քո, պահել զքեզ. զի ի վերայ ձեռաց բարձցեն զքեզ, մի երբեք հարցես զքարի զոտն քո։ Պատասխանի ետ նմա Յիսուս և ասէ. ասացեալ է, թէ ոչ փորձեսցես զՏէր Աստուած քո։ Եւ կատարեալ զամենայն փորձութիւնս՝ սատանայի, ի բաց եկաց ի նմանէ առ ժամանակ մի։ Գ. 13։

Արարչա։ Քոյ. Խնդրեա։ Կեցո. Յոյնս։ Աշ. Քում ամեն։

---

## ՑԵՐԵԿՈՑԻՆ

*ՄԵՍԵԴԻ Ծննդեան. Մեծացուսցէ անձն : Զի հայեցաւ։ Քարոզ Մայր սուրբ։*

ՀԱՄԲԱՐՁԻ ԴԶ

*Լոյս ի լուսոյ ի Հօրէ առաքեցար և : Իննն պատ. : 1178։*
*Քար. Սուրբ զԱստուած : Կեցո. Յաւիտենից : Առ. Ընկալ Տէր։*

---

# Ա. ԿԻՐԱԿԷ

## ԶԿՆԻ ՅԱՅՏՆՈՒԹԵԱՆ

## ՑԱՒԱԻՕՏՈՒ

ՀԱՐՑ ԴԶ

*Ծագումն միածնի Որդւոյ քո յերկնից : Իւր տեղւոջն : 719։*

*Յայսմ կիւրակէի յոր յայն և լինի, աստուածայայտնութեան Աւետարան ի ժողովրդեան զայս երգեա։*

*Ալէլուիա, Օրհնե*

*Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու : Գ. 14.*

*Տէրն մեր Յիսուս Քրիստոս*

*Եւ դարձաւ (Յիսուս) զօրութեամբ Հոգւոյն ի Գալ : 568։*

---

# Ա. ՉՈՐԵՔՇԱԲԱԹԻ

Պահոց

ՅԱՒԱԻՕՏՈՒ *ՀԱՐՑ ԲԿ. Մանկանցն զձայնն քեզ : 998։*

# Ա. ՈՒՐԲԱԹ

Պահոց

---

# Բ. ԿԻՐԱԿԷ

## ԶԿՆԻ ՅԱՅՏՆՈՒԹԵԱՆ

## ՅԱՒԱԻՕՏՈՒ

ՀԱՐՑ ԲԿ

*Կամաւորութեամբ եկիր ի չարչարանս : Իւր տեղւոջն : 638։*

---

## Բ. ՉՈՐԵՔՇԱԲԱԹԻ

Պահոց

ՅԱՌԱԻՕՏՈՒ ՀԱՐ Յ ԳՁ. Օրհնեալ ես Տէր։ 1000։

---

## Բ. ՈՒՐԲԱԹ

Պահոց

---

## Գ. ԿԻՐԱԿԷ

ՁԿՆԻ ՅԱՅՏՆՈՒԹԵԱՆ

ՅԱՌԱԻՕՏՈՒ

ՀԱՐ Յ ԳՁ

Արարիչդ արարածոց Քրիստոս այսօր։ Իւր տուեալն։ 665։

---

## Գ. ՉՈՐԵՔՇԱԲԱԹԻ

Պահոց

ՅԱՌԱԻՕՏՈՒ ՀԱՐ Յ ԳՁ. Օրհնեալ ես Տէր։ 1044։

---

## Գ. ՈՒՐԲԱԹ

Պահոց

---

## Դ. ԿԻՐԱԿԷ

ՁԿՆԻ ՅԱՅՏՆՈՒԹԵԱՆ

ՅԱՌԱԻՕՏՈՒ

ՀԱՐ Յ ԳԿ

Այսօր զենեալ մեզ պատարագ անա։ Իւր տուեալն։ 677։

---

## Դ. ՉՈՐԵՔՇԱԲԱԹԻ

Պահոց

ՅԱՌԱԻՕՏՈՒ ՀԱՐ Յ ԳԿ. Սուրբ Աստուած Հայր։ 1054։

---

## Դ. ՈՒՐԲԱԹ

Պահոց

---

Digitized by Google

# ԽՐԱՏՔ

*Յաղագս տօնից որ զկնի ութօրէից Յայտնութեան։*

Քանզի այս մինչ յութօրէից Յայտնութեան մինչև յԱռաջաւորաց Բարեկենդանն յաւելու և նուազի, վասն հաշուելոյ և տօն զատկի։ Թէ շատ է, վասն շաբաթուց տօնեն մի մի տօնեա, և թէ սակաւ, և կէս, որ կճարէ տօնեն։ Եւ թէ լինի որ բնաւ տարի չտօնելի, վասն տաւնից տօնելոյ մի նուազել. յետ տօնիցն որ լինի կարգաւոր և յառաջ քան զտօն հայրապետացն տօնեա կարգաւ։

---

## Ա

## Յովհաննու Կարապետին

### Ի ԳԻՇԵՐԻ

ՕՐՀՆՈՒԹԻՒՆ Ա Կ

Արեգականն արդարութեան ծագման առաւօտն առաւօտեալ. նախընթաց ճանապարհի Որդւոյն Աստուծոյ տնօրէնութեան սուրբ Յովհաննէս. առ Քրիստոս բարեխօսեա փրկել անձանց մերոց։ Բարձրելոյ անձառ խորհրդոյ տեսանող իմաստուք հոգւոյն. ի յորվայնէ մաքրեալ տաճար Աստուծոյ եւ բնակարան սուրբ Երրորդութեանն. առ։ Գաբրիէլ հրեշտակապետն աւետեաց առ Զաքարիա. աւետաբանել ըզհրաշալի ծնունդ քո սուրբ յամուլ ծերոյն Եղիսաբեթէ. առ։ Գումապետն երկնից զօրացն երեւեալ քահանայապետին. յորժամ մտանէր ի սրբութիւն սրբոցըն խնկարկելով ըստ օրինացն ի տաճարին. առ։ Եւ տեսեալ զանհաւատութիւնն ի ձեւ մարմնոյ յանձն աղանոյն. պակուցեալ յերկիւղ մտացն սասանելով եւ հաստատիւր բանիւ հրեշտակին. առ։ Զգերագոյն քան զբնութիւն լուեալ զեղանակ ծննդեանն քո. առ. կացեալ հիանայր Զաքարիաս և համրացեալ պատժիւր պապանձեալ լեզուաւ. առ։ Էակից բանն ի հօրէ իջեալ յերկնից ընդ կուսին ծոցն. ուստի Գաբրիէլ վերա-

Digitized by Google

ւաճէր զկոյսըն Մարիամ առ. ամլութեամբ յղացեալն ըզքեզ յորովայնի. առ։ Ընդ ժամանել ձայնի ողջունին Մարիամու առ Եղիսաբեթ. խայտացեր ձայնդ ընդ մառաջ բանին Աստուծոյ յորովայնէ ամլոյն երկըրպագելով. առ։ Թագաւորըն բոլորից պարածածկեալ յարգանդի կուսին. զոր ծառայդ հաւատարիմ տեսեալ հոգւովըն սըրբով եւ բերանով մօր քո օրհնաբանէիր. առ։ Փառանգաւոր հին օրինացն արդարութեան ընդ մարգարէիցն. եւ նախաշաւիղ հետեւողաց անձուկ ճանապարհին նոր օրինացս ընդ առաքելոցն. առ։ Ի յանապատի հրեշտակական վարուք բնակեցար ըստ Եղիայի. կերակրելով մարախ եւ մեղր վայրենի հին եւ նոր պատուիրանաց օրինակաւ. առ։ Լուսապայծառ շնորհօք հոգւոյն զարդարեալ ըստ ներքին մարդոյն. իսկ արտաքուստ անմաքրական ստեւովըն ծածկեալ ըստ տըխրագոյն զգեստու նախահօրն. առ։ Խորհըրդով մաքրագունիւ արդարապէս արիացեալ. ի յօրինակ մեռելութեան զօտի մաշկեղէն ընդ մէջ ածեալ քո երեւեցար. առ։ Ծընընդեան հոգւոյն սըրբոյ զորս յԱդամայ յորդիս Աստուծոյ. ի քէն ըսկիզբն եւ օրինակ եղեալ ի Յորդանան մըկըրտութեամբն յապաշխարութիւն. առ։ Կարապետ Թագաւորին երկնաւորի առաքեցար. պատրաստել ըզճանապարհս նորա յոգիս մարդկան ըստ Եսայեայ քարոզելոյն. առ։ Հուր կիզանող զմեղըս մարդկան գուշակեցեր զառաջին գալուստըն Տեառն. իսկ զատողական հեծանոցաւ մաքրել ըզկալ աշխարհի ըզմիւսանգամ գալըստեան խորհուրդն. առ։ Ձայն բարբառոյ յանապատէ ըզքեզ անուանեաց Եսայիաս. եւ հրեշտակ Տեառն առաջի առաքելով ծանոյց հոգւովըն Մաղաքիաս. առ։ Ղեւտական քահանայութեանն յԱ-

հարուստէ ի քեզ կատարումն. եւ ճշմարիտ քահանա-
յութեանն որ ի Քրիստոսէ ի քէն ըսկիզբըն հաստա-
տութեան. Առ Քրիստոս բարեխօսեա վասն անձանց
մերոց: Ճրագ օրինացըն Մովսէսի լուսատու տան
Իսրայէլի. եւ իմանալի արեգականըն յառաջ երթ-
ալ ի յերկիր ծագմանն ի կուսէն. Առ: Մըկըրտել ըզ-
բոլորից Աստուածն առ քեզ եկեալ հրամայէիր. տե-
սանելով զգերապայծառ լոյս աստուածութեանն ընդ հո-
ղեղէն բնութեան նըսա պարունակեալ. Առ: Յորժամ էիր ի
Յորդանան հօրն Աստուած ի քէն մըկըրտել. վեր-
կան իշխանութիւնքըն զահի հարեալ զարմանային նո-
րահրաշ տեսլեամբն. Առ: Նոր Հեղիաս նախ գալըստեան
քարոզ ըստ հրնոյն որ ի յերկրորդին. արժանի եղեր լը-
սել հայրական ձայնին ըզՄիածինն Դա է Որդի իմ սիր-
ելի. Առ: Շնորհատուն առաքածոց որ ի Հօրէ հոգին ճշ-
մարիտ. աղաւնակերպ տեսլեամբ քեզ երեւեցաւ զա-
տուածութիւն իւր էակցին յայտնեալ աշխարհի. Առ:
Որ ըզխորհուրդս անճառելի տնօրէնութեանըն Քրիստոսի
ոչ լուծանէիր. զհամագոյ Երրորդութեանն անձնա-
ւորութիւն տեսանել ի Յորդանան արժանի եղեր.
Առ: Զոր իշխանըն խաւարին յաշխարհական մեղաց
ծովէս. հալածեցաւ ջրովըն Յորդանանու մըկըրտեալ
ի քէն ըզգլուխ վիշապին ի նմա խորտակեաց. Առ:
Պարանգլուխ մարգարէիցն օրինադրէր զգառն օրինակի.
իսկ դու զճշմարիտ ծնեալն ըզՔրիստոս անուանեցեր
զառն Աստուծոյ եւ բարձող մեղաց. Առ: Ջուր մաք-
րութեան ի քէն մըկըրտելոցն յարբումն իմաստից. ա-
պըստամբացն յերկիր հատմամբ տապարին և խոնար-
հացն ի խորան իմաստութեան. Առ: Ռահ լուսոյ ար-
դարութեան եղեր անձուկ ճանապարհաւն. առաջնոր-
դեցեր որդւոց մարդկան ելանել յերկինս անմարմ-

յան վարուց քոց օրհնական. առ: Սիրոյ անման և
երկնաւոր սուրբ փեսային եկեղեցւոյ. փեսաւէր և
հրաւիրակ առաքեցար հարսին որդւոյ թագաւորին.
առ: Վարդապետին տիեզերաց աւանդեցեր զքո աշա-
կերտեալսն. եւ ըզլոյս գիշերային ճրագի քո բանի
համապայծառ արեգականն աւետարանի. առ: Տի-
րականն սուրբ օրհնացն եղեր քարոզ առ օրհնազանցսն.
որով մատնեալ բանտից եւ կապանաց մոլեգնութեան մ-
բըռն Հերովդիայ. առ: Բամբեալ խընդրոյս արբեցութեան
յամուր ծնընդեան մանկամբերին. զքեզ որ խայտալով
ծընար տաճարակդ անապատի կաքաւելով խընդրեաց
ի մահ դուստր Հերովդիադայ. առ: Ցընծութեան ա-
ւետաբեր եղեր հոգւոցն որ ի դժոխս. կարապետ
կըրկին իջման Տեառն ի ստորին կողմ երկրի որով լու-
ծան երկունք մահու. առ: Նիւթական մարմնով
յերկրի յաշակերտաց քոց պարածածկեալ. եւ աննիւ-
թական հոգւով ընդ Քրիստոսի յարքայութիւնն երկնից
վերափոխեցար. առ:

Հգ. Որ յերկնային զօրս անմարմնոցըն նախ հեղեր
առատապէս Հոգիդ ճըշմարիտ. զաստուածային և զգե-
րագոյն քո իմաստութիւնդ լինել փառաբանիչ սուրբ
Երրորդութեանդ. ընդ ‖ Նոսին փառաւորեմք զերրեակ
միութիւնդ: Որ զկերպարանն աստուածային ստեղ-
ծեալ Երրորդութեանդ խորհրդակցութեամբ. զարդա-
րեցեր փըչմամբ շնորհաց քոց կենդանարար. եւ ընդ
ծնեալսն առ ի նմանէ խօսեցար օրինօք եւ մարգարէ-
իւք. ընդ Նոսին: Որ յերկրորդի լինելութեանս յետ
յարութեան քում էակցին. մըտեալ ի վերնատունն
դրօքըն փակելովք շնորհելով ըստ առաջին փըչմանն
ըզքեզ մետասանից առաքելոցն ասաց առէք Հոգի
սուրբ. ընդ Նոսին:

Digitized by Google

ՀՆ. Յորժամ յերկնից գոչէ փողն ազդեցութեան առնելով ուխեղերաց ի դատաստանն ահաւոր. յայնժամ աւուր յահեղին յիշեա Տէր եւ ըզմեր ըննջեցեալսն եւ հանգո ընդ սուրբս քո: Յորժամ ճառագայթք աստուածութեանն փայլեն ի յարեւելից. եւ դըպրութիւնք հրաշիցըն բանին յայնժամ աւուր յահեղ. յիշեա: Զարհուրեալ դողան արարածք ի ձայնէ սոսկալագոչ փողոյն. յորժամ հարկանէ հրեշտակապետն եւ կոչէ ի դատաստան զազգս որդւոց մարդկան. յայնժամ աւուր յահեղին յիշեա:

ՄԾ. Որ առաքեցեր զՄիածինդ ի փրկութիւն ազգերաց. անեղ էութեամբ եղանիլ մարմին ի սուրբ կուսէն Հայր երկնաւոր. Զոր առ քեզ անուիմըք բարեխօս վասն անձանց մերոց: Որ զնախագրեալսն առ ի քէն մարգարէիւք եկիր կատարել. անմայր ի Հօրէ անըսկըզբնաբար լինել անհայր ի սըրբոյ կուսէն. զոր: Որ ի լըռութե անճառից ի քէն յայտնեալ ծածկեալ խորհըրդոյ. ի քէն մաքրելոյ երջանիկ կուսին Հօր զօրութիւն հովանաւորեալ. զոր: Որ զնախամօրն անիծից երկանց լուծեր ըզդատակնիք. որ ըզտըրտմական սահմանեաց ծընունդ անախտաբար ծնանելով ի քէն. առ նա միշտ բարեխօսեա:

ԽՁ. Որ ի սկըզբանէ իմաստութեամբ հաստատեցեր զեկեղեցի Հօր իմաստութիւն. զոր նախանըկարառաթեամբ նըշանակեաց Մովսէս խորանաւն երկնահանգոյն ի Սինա լերինն. լուսաւորելով փառօքն Աստուծոյ: Որ ըզխորհուրդ անապական տնօրէնութեանըդ քո ի սըրբոյ կուսէն. տըպաւորելով տապանակն աստուածային ուխտի կտակարանաց Բանիդ Աստուծոյ. փառաց անեղիդ տեղի հանգըստեան: Որ ի կեանըս վերադար-

Digitized by Google

ձի բնութեանս դարձմամբն Յորդանանու օրինակեցեր.
եւ ըզբըռնութիւն մահու և դըժոխոց կործանմամբն
Երիքովի տապանակաւ խաչին հրաշագործեալ Նոր Իս-
րայելի. օրհնութիւն քեզ Տէր երգեսցեն մանկունք:

—Փառք Հօր: Փութայիր մեզ յօգնութիւն առ ի
վերուստ սուրբ Յովհաննէս. առաքեալ և մարգարէ
եւ կարապետ եւ մըկըրտիչ Որդւոյն Աստուծոյ. ‖ առ
Քրիստոս բարեխօսեա վասն անձանց մերոց:

—Այժմ և միշտ: Քահանայապետին Քրիստոսի որ
ի խաչին պատարագեալ. քահանայդ ինքնանըւէր մա-
տո զպատարագս երգարանիս եւ տօնողացս շնորհել
զքաւութիւն. առ:

---

### ՑԱՌԱՒՕՏՈՒ

∻ԱՐՑ ԴՁ

Որ աւետաւոր քում գալըստեանդ առաքեցեր զհրեշ-
տակապետըն Գաբրիէլ. աւետարանել Զաքարիայ
զաւետեօք ծընընդ յառաջընթաց կարապետին քում
Յովհաննու. ‖ աղաչանօք սորա կեցո զմեզ Տէր Աստը-
ւած հարցըն մերոց: Որ յարգանդին լըցեալ Հոգ-
ւով երկըրպագեաց քեզ յորովայն սըրբոյ կուսին. զոր
Եմայրիւս վերագոչեաց ձայն բարբառոյ յանապատէ որ
պատրաստեաց զեկեղեցի հարսըն մաքուր սուրբ փեսա-
յին առ: Որ բոցեղէն հոյլք քրովբէիցն ոչ իշխէին հայել
ի փառս աստուածութեանդ. սա հողանիւթեայ զօ-
լեալ բնութեամբ մըկըրտեաց ըզքեզ մարմնով ի ջուրըն
Յորդանանու. աղաչանօք:

Գ. ԸզՏէր օրհնեցէք բարձր արարէք ըզնա յաւի-
տեան: Որ աւետաբեր գալըստեան Բանին. առաքե-
ցաւ ձայնն յանապատէ ըզՏէր: Որ սըրբութեանց սուրբ
կուսածին Որդին. ի յԱմլորդւոյն հայցէր մաքրել Յոր-

Digitized by Google

ղանանու ։ Ընդ Տէր օրհնեցէք բարձր արարէք ընդ յաւիտեան ։ Որ զծածկեալ խորհուրդ սուրբ Երրորդութեանն . կատարապետին յայտնեալ Հոգին աղաւնակերպ իմաստմբ ընդ Տէր ։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԴՁ

Առաւօտ խաղաղութեան և արուսեակ զըւարթա ։ 982։

ՈՂՈՐՄԵԱ ԴՁ

Երկնաւոր փեսայ անճառաւոր լոյս իմանալի . որ ի յերկնից իջեր . ի սէր հարսին քո եկեղեցւոյ . զոր խօսեցար . քեզ բարեկամս և փեսաւէրս զՅովհաննէս . Սորին մաղթանօք ողորմեա ։ Քաղաքակրթելոց անհաս և անտես ի սերովբէից . զօրութեանց սուրբ և տէր բոլորից . խոնարհեցար ի Յորդանան . հայցելով ի ծառայէն մկրտութիւն լուանալ զմեղս Ադամայ . սորին ։ Որ յԱմենորդույն վերկայեցար գառն Աստուծոյ բարձող մեղաց . զոր զերագոյն արդարոց . ծանուցեր մեծ ի ծնունդս կանանց . եւ հրամանօ օրհնեցեր . որ և ի դրժողս ընդփրկական գալստեան քո քարոզեաց . սորին ։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԴՁ

Այսօր ցնծան հրեշտակք ի յերկինս . յիշատակաւ հողանիւթ հրեշտակին որք համագունեալք ձայնիւ բարբառոյ երգեն զօրհնութիւնս Հօր ի բարձունս ։ Այսօր ցնծան հոգիք արդարոց . նահապետաց և մարգարէից ձայնակից լինել մեծին ի ծնունդս կանանց երգեն զօրհնութիւնս Որդւոյն միածնի ։ Այսօր ցնծան դասք առաքելոցն . տօնախմբելով զյիշատակ մեծի Մկրտչին . որ առաքելոցն է սկիզբն և մարգարէից լրումն . ընդ նոսին և մեք բողխեցելոյն ի Հօրէ երգեմք ընդփառս ի բարձունս ։

Առաւօտու Երգ . Դու միանուկ մարգարէ ։ Տալ զգիտու ։

ՄԱՆԿՈՒՆՔ ՆՒ ՀԱՄԲԱՐՁԻ ԴԿ
Մարգարէից գերագոյն և մեծ ի ծնունդս կա ։ 837։

---

# Բ

## Պետրոսի Աղեքսանդրիոյ հայրապետին եւ Աքիսողոմայ սարկաւագին

ՑԱՌԱՒՕՏՈՒ ՀԱՐՑ ԴՁ. Որք հաղորդեցան չար ։ 99։
ՄԱՆԿՈՒՆՔ ԳՁ. Մանկունք Նոր Սիոնի փա ։ 218։

---

ՑԵՐԵԿՈՑԻ ՀԱՄԲ. ԳՁ. Հանդիսացեալ ընդ ։ 939։

---

# Գ

## Ս. Անտոնի անապատականի

### Ի ԳԻՇԵՐԻ

ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԱՁ

Որ գերազանցեալ գոլով առաւել քան զբնութիւն մարդկան երանելին ի հայրն սուրբ Անտոն. ‖ առ Քրիստոս բարեխօսեա վասն անձանց մերոց ։ Որ անճանաչելի լինելով զբազմամժամանակեայ աւուրբք յօժարութեամբ բարձեր զկարիս մարմնոյ. առ Քրիստոս ։ Անմոռաց յիշմամբ առաջի Քրիստոսի. օգնական լեր տօնողացս ըզյիշատակըն քո. զի և զմերս ընկալցի զօրհնաբանութիւն ։

† Որ ի հանդէս քո ճըգնութեան. երկնային զըւարթունքըն նայեցեալ զարմանային. ի մարմնի տեսանելով զանմարմին իւրեանց ըզվարս. ‖ ով սուրբ հայր Անտոն. բարեխօսեա առ Քրիստոս վասն անձանց մերոց ։ Որ գերագոյն քան ըզբնութիւն հողեղինաց ժուժկալեալ. զանազան տանջանաց համբերելով յաներևոյթ թըշնամւոյն. ով սուրբ ։

ՑՈՎ. Կարապետ արքայութեանն երկնից սուրբ Յովհաննէս Մըկըրտիչ. որ եղեւ աշխարհի քարոզ փըր-

կութեան յաւիտենից. ‖ Աղօթիւք սորա Տէր լուր մեզ եւ ողորմեա։ Որ առաւել քան զմարգարէս մեծ ի ծնունդս կանանց. որ ընդ մեզ յայտնեաց զԱստուած եւ մարդ յերկրի երեւեալ. աղօթիւք։ Զձայն բարբառոյ յանապատի եւ կատարիչ խորհրդոյ. գլխատեալ այսօր ի Հերովդիայ վերափոխեցաւ ի դասս անմարմնոցն. աղօթիւք։

ԱՌ. Որք ի սկզբանէ պատուեալ եղեն ի աջէ բոլորից Հօր. առաքելական կոչմամբ ընտրեցեալս հրաւէրեցին յուսով հասանել մասին. ‖ Վարդապետութեամբ սոցա ամենեքեան օրհնեսցուք զՏէր։ Որք ակնատեսք եւ սպասաւորք եղեն մարմնացելոյ Բանին. զեր ի վերոյ անմարմնոց դասուցն հանդիպելով շնորհի. վարդապետութեամբ։ Որոց դատողական աթոռ ահեղ ատենին հանդերձեալ մնայ. կատարել ի մեզ դատաստան ըստ գրելոյն. առ սոսա անկցուք զղջացեալ անձամբ պաղատելով. հաշտեցուցանել սոցա ընդ մեզ զահաւոր [illegible] զդատաւորն։

ՄՐԳ. Երգս առեալ մարգարէիցըն հրաշալիք ձայնիւ անդադար օրհնաբանեն զմարմնացեալն ի սուրբ կուսէն. ‖ Որ երեւեցաւ մեզ ի փրկութիւն։ Զնեղութիւն եւ զչարչարանս յանձն առին կամաւորապէս ժուժկալեալ համբերեցին վասն անուանն Տեառն. որ երեւ։ Աներկիւղ քարոզեցին յաշխարհի ըզճշմարիտ մարդեղութիւն մարմնացելոյն ի սուրբ կուսէն. որ երեւ։

ՄՐՏ. Առաքինասէր վարուք հաճոյացան սուրբ վկայքն. եւ ընտրեցան կամաւոր մահուամբն իւրեանց. ‖ Եւ հրաւիրեցան ի կոչումն արքայութեանն երկնից։ Որք մատնեցին զանձինս իւրեանց ի փորձ սրոյ եւ

հրոյ. եւ հեղմամբ արեանն իւրեանց եղեն վըկայք Քրիստոսի. եւ հրաւիրեցան։ Աղօթիւք սոցա եւ բարեխօսութեամբ. պարգեւեա մեզ Քրիստոս Աստուած բաժին. ընդ հրաւիրեալսն ի կոչումն արքայութեան երկնից։

ՀԳ. Որ յամենայնի ես աստուածութիւն. եւ ի ձայն հնչման իջեր յերկնից սուրբ Հոգի. ‖ ողորմեա մեզ։ Որ զամենայն լընուս զօրութեամբ քո. եւ ի դասս առաքելոցն իջեր բընակել սուրբ Հոգի. ողորմեա։ Որ անբաժանելի ես յաստուածութենէն. եւ ի հրեղէն լեզուս բաժանեալ հանգեար յառաքեալսն սուրբ Հոգի. ողորմեա։

ՀՆ. Ձայն արկեալ կենարարին աստուածայինն բարբառովն. ասէ եկայք օրհնեալք Հօր իմոյ ժառանգեցէք. պատրաստեալ ձեզ ըզկեանսն ի հանդերձեալ երկրին։ Ընդ որս եւ ձայնել քեզ հաւատով ի յորդոր վերինս. Աստուածազգեաց լուսով պայծառացեալ ի դասս անմարմնոցն. ի լսել ըզձայն երանաւէտ կոչմանն։ Ընդ աջմէ քումմէ կացո ընդ իմաստունս սուրբ կուսանս. ի լուսեղէն առագաստին պայծառացեալ ի դասս անմարմնոցն. ի ժողովս անդրանկաց գրելոց ի յերկինս։

ՄԾ. Որ զաւետիս հոգւոյն ի հրեղէն ի հրեշտակէն ընկալար որպէս լեր. բերկրեալդ Տէր ընդ քեզ Մարիամ անհարսնացեալ։ Անըսկիզբըն Բանըն հաճեցաւ առնուլ մարդեղութեամբ ըսկիզբն ի կուսէդ. Քրիստոս Աստուած թագաւորն յաւիտենից։ Աղաչեմք ըզքեզ սուրբ Աստուածածին. առ Քրիստոս բարեխօսեա փըրկել. զժողովուրդս քո զոր գընեաց արեամբն իւրով։

ԽԶ. Ի խորանի քում սրբութեան զոր ընտրեցեր

զայլըստեամբըդ քո Քրիստոս . Ի սմա միաձայնեալ ա-ղաչեմք ըզքեզ . լուր ձայնի աղաչանաց մերոց ընկալ եւ կեցո ըզմեզ ։ Աստուածային լուսով քո . պայծառ քան զարեգակըն լուսաւորեցեր զքո սուրբ զեկեղեցի . ի սմա ։ — Փառք Հօր ։ Այսօր և հրեշտակք ուրախա-նան ընդ պայծառութիւն քո սուրբ եկեղեցւոյ . ի սմա ։

— Այժմ և միշտ ։ Ուստի եւ մեք տօնելով ըզծը-նութեան քո սուրբ զյիշատակս . որ եղեր նախընթաց բարեաց կենաց ճանապարհին . փոխեցար յերկրայնոց յանմահից դասակցութիւնս . ով սուրբ հայր Աստ. բարեխօսեա առ Քրիստոս վասն անձանց մերոց ։

ՅԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԱՁ

Նախանշկերպըն միածնանց երանելի սուրբ հայր Ան-տոնիոս . վերնական յուսոյն ակն ունելով զերկրաւոր արհամարհեաց . Եւ զինուորեցաւ քեզ Քրիստոս Աս-տուած հարցըն մերոց ։ Մենամարտեալ ընդդէմ չարին բազմահնար վիշապին . ժուժկալեալ համբերեաց ա-ղի ազգի վըշտաց քարավէժ կոչկոճմանն . Եւ զինուոր Յանապատի բնակելով աղօթանուէր թեւօքըն համ-ծեաց ըզբազմութիւն լեգէոնին զօրացն . Եւ քաջալերեալ յորդորեաց ըզմիանձունս ամենայն . Եւ զինուորեցաւ

Գ. ԸզՏէր օրհնեցէք ։ Փառաբանիչք Աստուծոյ յի-շատակի սորա բարձր աղաղակեցէք ըզնա յաւիտեան ։ Ի փապարըս լերանց բնակելով խարազնազգեաց ճգնու-թեամբ . ի յայրս և ի ծերպըս քարանձաւաց . փառա-բանիչք ։ Համանըմանեալ մեծին Եղիայի և Յովհան-նու Մըկըրտչի . վերաթեւեալ ընդ առաջ Քրիստոսի փառաբանիչք ։

ՄԵԾԱՑՈՒՑԷ ԱՁ

Որ զԲանն Աստուած բաւական եղեր ընդունել ։ 197

### ՈՂՈՐՄԵԱ ԱՁ

Որ անմարմնական վարուք պայծառացեալ ի մարմնի զօրացեալ Տերամբ. ով սուրբ հայր Անտոնիոս. եղեր օրինակ բազմաց եղեր դուռն մտից կենաց ճանապարհին. ‖ յիշեսջիր ըզմեզ առաջի Քրիստոսի քո սուրբ և արժանընդունակ աղօթիւք: Որ առիր ըզլուծ խոնարհութեան համբերող խըստամբերութեամբ. եւ պարակցեալ օրհնութեամբ ընդ հրեշտակս. եւ խաչակրօն անդադար սաղմոսերգութեամբ. յիշեսջիր: Վասն որոյ եւ մեք այսօր տօնեմք ըզհանգըստեան օր յիշատակի քո. անմոռաց յիշմամբ հայցեսցես ի Քրիստոսէ զմեծ զողորմութիւն. քո սուրբ և արժանընդունակ աղօթիւք:

### ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԱՁ

Որ շնորհօք սուրբ Հոգւոյն բարձեր ըզխաչըն փրրկչական յորդեգրութեան շընորհս. ով սուրբ հայր Անտոնիոս. արժանացար երկնային կոչմանն և հրեշտակական դասակցութիւնան. ‖ օրհնեմք միշտ սուրբ զԵրրորդութիւնն: Այսօր և մանկունք սուրբ եկեղեցւոյ տօնեն ըզխաչակրօն քո սուրբ զյիշատակս. ով սուրբ հայր ճըգնաւորաց. զի ընկալցիս զանապական պարգեւսն ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ. օրհնեմք: Զառատապարգեւս վերընկալեալ ըզփառս յաջակողմեանն Քրիստոսի ընդ իմաստունս կուսանսն. հայցեսցես ի Քրիստոսէ ըզթողութիւն մեղուցելոցս. ի լսել ըզձայնն թէ եկայք օրհնեալք Հօր իմոյ ժառանգեցէք ըզկեանսն յաւիտենից:

### ՄԱՆԿՈՒՆՔ ԵՒ ՀԱՄԲԱՐՁԻ ԲՁ

Պարծանք եկեղեցւոյ եւ ուրախութիւն հրեշտակաց. ով սուրբ հայր Անտոն. զաղաչանըս մեր հանապազ մատո սուրբ Երրորդութեանն: Որ ի մարմնի կատու-

Digitized by Google

ցեալ եւ զանմարմնոցըն բերելով ի քեզ ըղձմամբ. Ով սուրբ հայր Անտոն. զաղաչանըս մեր հանապազ մա-տո սուրբ Երրորդութեանն: Բաժակ հոգեւորական լը-ցեալ աստուածային սիրախութեամբ. ով սուրբ:

---

## Դ

### Ս. Թէոդոսի Թագաւորին եւ մանկանցն Եփեսոսի

Տես յէջն Բովանդակ կարգերն : 855 :

---

## Ե

### Ս. Կիրակոսի եւ մօր նորա Յուղիտայ

ՅԱՌԱՒՕՏՈՒ ՀԱՐՑԴԿ. Որ զհրաշափառ քո զօ: 102:

ՄԱՆԿՈՒՆՔ ԲԿ

Յարմարող բարեաց. քաղցըր շնորհիւ վերաբե-րեալ ծաղիկ հաւատոյ. գեղ վայելչութեան. զոր եկեղեցւոյ պըտղաբերեալ ըղքեզ ‖ ով սուրբ Կիրակոս. տընկողին ըղքեզ Քրիստոսի բարեխօսեա վասն ան-ձանց մերոց: Աստանոր մօր բարեպաշտի որդի եւ երկնաւոր հանդիսադրի նահատակ. քաջ ըսպառա-զէն զինուորեալ հոգւով տղայ գոլով մարմնով մօր ընդ անօրէնս եղեալ պըսակեցար ով սուրբ: Յօգ քաղցրութեան ծաւալեցաւ յանդգաստանըս ձեր. յոր-ժամ պատուականն արիւնըն ձեր հեղաւ յերկիր. եր-կնայինքն ուրախացան ըղձեց յինքեանս ընդունելով մայր որդւով երկրեալ ով սուրբ Յուղիտա. աղերսե-ղին ըղձեց Քրիստոսի բարեխօսեցէք վասն անձանց մերոց:

---

ՑԵՐԵԿՈՅԻՆ

ՀԱՄԲԱՐՁԻ ԲԿ

Վարդագոյն վառեալ ծաղիկ ի նորատունկ բու-րաստանի. լուսազարդեալ երեւեցար. ով Երանեալ

սուրբ Կիրակոս. Հ վասըն մեր բարեխօսեալ Քրիստոսի փրկչին մերոյ: Անդամնի քաղցրաբարբառ հեղաբուխեալ ընդՏէր Յիսուս. վերստանկահօս արեամբ ներկեալ ծակերողբ Զ դեռաբուսեկ. վասըն: Բաբունւոյ վարդապետին համեղ ողկոյզ արեամբ ճըմլեալ. պըսակեցար ի Քրիստոսէ ընդ երջանիկ մարտիրոսացն. վասըն: Դու պարծանք սուրբ հաւատոյ լուսոյ պըսակ եկեղեցւոյ. մայր որդւով բերկրեալ այսօր ով երանեալ սուրբ Յուղիտա. վասըն մեր բարեխօսեցէք Քրիստոսի փրկչին մերոյ:

---

## Զ

### Ս. Վահանայ գողթնացւոյն

ՅԱՌԱՒՕՏՈՒ ՀԱՐՑ ԱԶ. Զքեզ արդար և ուղիղ: 80:

ՄԱՆԿՈՒՆՔ ՆԻ ՀԱՄԲԱՐՁԻ ԲԶ

Զարմանալի է ինձ. քան ըզերգս. երաժըշտականաց ձայնս. ողբոց քոց հընչմունք. ով երանելի տէր ըՎահան. ընտրեալ յԱստուծոյ: Առաւել յորդորէ այս. ըզհոգւոյս ըմանուսնս. յորինել քեզ երգս ոչ ըզըղջականս. այլ հոգեւորս եւ ուրախարարս. յորդորականս եւ նորոգեալս. ով երանելի տէր ըՎահան. ծառայ Քրիստոսի: Զարհուրեցուցանէ քո ճըգնութիւնդ. ըզմարմնոյս բընութիւնս. իսկ դու անուանել գըտար. ով երանելի տէր ըՎահան. սիրող Քրիստոսի: Արտաքընոցն ըզգաստաքն. ատեղծիչ բանք. սնոտեացն ի պատըրութիւն. իսկ քոյդ սիրայնոյ. աստուածածարեալ եւ ոգեշնչեալ. ով երանելի տէր ըՎահան. ընտրեալ յամզաւտաց: Որպէս ըզքաջ նահատակ. պատրաստեալ ի պատերազմ. կատարե-

ցեր զընթացըս քո արիաբար. յաղթեցըն հաւա-ւայնոյ. զաստուածորեան ընդ անմարմինս կանոն. նկ երանելի տէր մեր ըն Վահան. Գողթնեացն իշ-խնդրեցող:

---

## Է

### Ս. Աթանասի եւ Կիւրղի հայրապետացն Աղեք-սանդրիոյ

ԻԳԻՇԵՐԻ ՕՐՀ. ԱԿ. Որք զարդարեցին տնօրի: 870:
ՑԱՌԱԻՕՏՈՒ ՀԱՐՑ ԳՁ. Որ զանչափ քո զբարեն: 92:
ՄԱՆԿՈՒՆՔ ՆԻ ՀԱՄԲ. ԳՁ. Մանկունք նոր: 218:

---

## Ը

### Ս. Գրիգորի աստուածաբանին

ԻԳԻՇԵՐԻ ՕՐՀ. ԱԿ. Որք զարդարեցին տնօրի: 870:
ՑԱՌԱԻՕՏՈՒ ՀԱՐՑ ԴՁ. Սքանչելագործ Աստ: 874:

ՄԱՆԿՈՒՆՔ ՆԻ ՀԱՄԲԱՐՁԻ ԲՁ

Որ լուսով աստուածային բանին զարդարեցեր զեկեղեցի. եւ զխաւարն անգիտութեան հալածեցեր յազգաց մարդկան. Ով տէր սուրբ Գրիգոր. բարեխօս լեր վասըն մեր առ միածին Բանըն Հօր: Որ զհամագոյ բընութիւն միասնական Երրորդութեանըն յայտնեցեր եկեղեցւոյ խոստովանել միութիւն. ով տէր: Որ զփըրկական տնօրէնութիւն մարդացելոյն վասըն մեր ուսուցեր մի յերկուց նոր խառնուածն ըսքանչելի. ով տէր:

---

## Թ

### Ս. Տրիփոնի վկային

ՑԱՌԱԻՕՏՈՒ ՀԱՐՑ ԱԿ. Սուրբ Աստուած արա: 82:

---

## Ժ

**Ս․ Վլասայ եպիսկոպոսին եւ Ոնեսիմեայ աշակերտին Պօղոսի**

ՅԱՌԱՒՕՏՈՒ ՀԱՐՑ ԱԿ․ *Որ բարձրեալդ ես և ի։* 83։
*ՄԱՆԿՈՒՆՔ ԱԿ․ Աշակերտք Քրիս․ Երէ․ պատ․* 987։
*ՀԱՄԲԱՐՁԻ* Մարտիրոսաց է յայնէն։

---

## ԺԱ

**Ս․ Սեղբեստրոսի Հռովմայ հայրապետին․ եւ յիշատակ Կոստանդիանոսի Թագաւորին**

Ի ԳԻՇԵՐԻ *ՕՐՀ․ ԱԿ․ Որ զերկնաւոր թագա։* 855։
ՅԱՌԱՒՕՏՈՒ *ՀԱՐՑ․ ԴՁ․ Որք հաղորդեցան չար։* 99։
*ՄԱՆԿՈՒՆՔ ԵՒ ՀԱՄԲ․ ԲԿ․ Ով երանելիդ ամ։* 860։

---

## ԺԲ

**Ս․ Գորդիոսի վկային եւ Պօղիքտոսի եւ Գրիգորիսի**

ՅԱՌԱՒՕՏՈՒ *ՀԱՐՑ ԲՁ․ Անոխակալ և բարեգութ։* 85։

---

## ԺԳ

**Ս․ Եւգինեայ կուսին եւ հօր նորա Փիլիպպոսի եւ մօր նորա Կղոդեայ եւ երկուց եղբարցն նորա Սերգեայ եւ Ապիտոնի եւ երկուց ներքինեացն**

ՅԱՌԱՒՕՏՈՒ *ՀԱՐՑ ԲՁ․ Ընդ սուրբս քո բարեբա։* 86։

---

## ԺԴ

**Ս․ Մարութայի եպիսկոպոսին**

ՅԱՌԱՒՕՏՈՒ *ՀԱՐՑ ԳՁ․ Որ զանչափ քո զբարե։* 92։
*ՄԱՆԿՈՒՆՔ ԳՁ․ Հանդիսացեալ ընդ երկնայ։* 939։
*ՀԱՄԲԱՐՁԻ* Մարտիրոսաց է յայնէն։

---

## ԺԵ

**Ս․ Եւգենիոսի, Մակարիոսի, Վաղերիոսի, Կանդիտոսի եւ Ակիւղասայ**

ՅԱՌԱՒՕՏՈՒ *ՀԱՐՑ ԲԿ․ Որք ի մարտի անօրինաց։* 89։

Digitized by Google

Իսկ ի ճաշուէան Աստուածածնայն [illegible] ի տօնին, ի Նախընթաց Երեկոյն ի [illegible] 1 խոնարհեցօ և Ասցես։

Լոյս զուարթ ։

ՄԵՍԵԴԻ Գոչնոէան. Օրհնեալ որ գաս յանուն Տեառն, օրհնեալ որ գալոց ես ։

Տէր Աստուած մեր երեւեցաւ մեզ. արարէք տօնս ուրախութեան կանխաւ մինչև յանկիւնս սեղանոյ ։

Քարոզ Ասասցուք ։

ՀԱՄԲԱՐՁԻ ԱՁ

Մարմնացեալդ ի կուսէն Նախայայ։ Երգեք [illegible] ։ 1207

Զնոյն Քար. Վասն խաղաղութեան։ Աղ. Հայր գթած։

Եւ [illegible], և յարեան Եկեղեցին [illegible] Աստուածածնա և [illegible] և ամենայն [illegible], մինչև այլ [illegible] [illegible], ([illegible]) և այլն

ՇԱՐԱԿԱՆ ԴՁ

Այսօր անսկզբնական ծնունդ Հայր։ Իոր [illegible]։ 1207

Զայս շարական [illegible] և այս ի [illegible] Եկեղեցն ։

Զնոյն շարականն ՍԱՂՄՈՍ ՂԷ. Ի Բէ

Կ8. Տեսին ամենայն ։ Փխ. Օրհնեցէք զՏէր յօրհ։ 315

ԸՆթերցուած ի Ղեւտացւոց: ԺԲ. 6:

Եւ ասէ Տէր ցՄովսէս յորժամ լնուցուն աւուրք սրբութեան նորա ի վերայ ուստերն կամ դստերն, ածցէ գառն տարեւոր յողջակէզ, և ձագս աղաւնւոյ կամ տատրակի վասն մեղաց ի դուռն խորանին վկայութեան առ քահանայն. և մատուսցէ առաջի Տեառն. և քաւեսցէ վասն նորա քահանայն, և սրբեսցէ զնա յաղբերէ արեան նորա ։ Այս օրէն իցէ այնորիկ՝ որ ծնանիցի արու կամ էգ ։ Ապա թէ ոչ գտանիցէ ձեռն նորա բաւական լինել գառամբ, առցէ երկուս տատրակս կամ երկուս ձագս աղաւնեաց, զմին յողջակէզ և զմիւսն վասն մեղաց. և քաւեսցէ վասն նորա քահանայն, և սրբեսցի ։ 8 ։

ԸՆթերցուած յԱռակաց : Ը. 22:

Տէր հաստատեաց զիս սկիզբն ճանապարհաց իւրոց ի գործս իւր, յառաջ քան զյաւիտեանս հաստատեաց զիս ի սկզբանէ յառաջ քան զերկիր առնել, և նախ քան զանդունդս գործել, և նախ քան զբղխել աղբերաց ջրոց, յա-

Digitized by Google

ռաջ քան զլերինս հաստատել, և յառաջ քան զամենայն բլուրս ծնաւ զիս։ Տէր արար զշէնս և զանշէնս և զծագս բնակեալս ի ներքոյ երկնից։ Մինչդեռ պատրաստէր զերկինս՝ ընդ նմա էի, և մինչ զատուցանէր զաթոռ իւր ի վերայ հողմոց, և յորժամ զօրացուցանէր զամպս վերինս, և յորժամ հաստատուն դնէր զաղբիւրս ի ներքոյ երկնից։ Ի դնել ծովու զհաստատութիւն իւր, զի ջուրք մի անցցեն ըստ ափն նորա, ի ժամանակի յորժամ հաստատուն դնէր զհիմունս երկրի, ես էի առ նմա պատշաճեալ. ես էի որում ուրախ լինէր Տէր հանապազ, և ցնծայի առաջի նորա յամենայն ժամ. յորժամ զուարճացեալ էր զտիեզերս բովանդակել, և ուրախ լինէր յորդիս մարդկան։ Արդ որդեակ լուր ինձ. և երանելիք են՝ որ զճանապարհս իմ պահեսցեն։ Լուարուք զիմաստութիւն՝ և իմաստունք լերուք, և մի պաշարիցիք։ Երանելի է այր որ լուիցէ ինձ, և մարդ որ զճանապարհս իմ պահիցէ. տքնիցի առ դրունս իմ հանապազ, և պահիցէ զսեամս մտից իմոց ։ 34 ։

Ընթերցուած յԵզեկիելէ մարգարէէ: ԽԴ. 1:

Եւ դարձոյց զիս ընդ ճանապարհ արտաքին դրան սրբութեանցն՝ որ հայէր յարեւելս. և այն էր փակեալ։ Եւ ասէ ցիս Տէր. այդ դուռն փակեալ կացցէ և մի բացցի, և մի ոք անցցէ ընդ դա, զի Տէր Աստուած Իսրայէլի մտցէ ընդ դա, և եղիցի փակեալ ։ 2։

Ընթերցուած ի Մաղաքիայ մարգարէէ: Գ. 1:

Այսպէս ասէ Տէր. ահա ես առաքեմ զհրեշտակ իմ, և տեսցէ զճանապարհս իմ առաջի իմ. և յանկարծակի եկեսցէ ի տաճար իւր Տէր զոր դուքն խնդրէք, և հրեշտակն ուխտի զոր դուք կամիք։ Ահաւասիկ գայ, ասէ Տէր ամենակալ. և ո՞վ ժուժկալեսցէ աւուր մտի նորա, և կամ ո՞ հանդարտեսցէ յայտնութեան նորա. զի նա մտցէ իբրև զբոց հալոցի, և իբրև զօճառ լուանալեաց։ Եւ նստցի ձուլել և սրբել իբրև զարծաթ և իբրև զոսկի. և սրբեսցէ զորդիս Ղեւեայ, և հալեսցէ զնոսա իբրև զոսկի և իբրև զարծաթ. և եղիցի Տեառն մատուցանել պատարագս արդարութեամբ։ Եւ հաճոյ եղիցի Տեառն պատարագն Յուդայ և Երուսաղեմի, որպէս յաւուրսն յաւիտենից. և որպէս յամսըն առաջինս ։ 4։

Digitized by Google

Պօղոսի առաքելոյն ի Գաղատացւոց թղթոյն է ընթերցուածս: Գ. 24:

Ապա օրէնքն դաստիարակ եղեն մեզ ի Քրիստոս Յիսուս, զի ի հաւատոցն արդարասցուք. այլ իբրև եկն հաւատքն, ոչ ևս ընդ դաստիարակաւ եմք. քանզի ամենքին որդիք Աստուծոյ էք՝ հաւատովք ի Յիսուս Քրիստոս: Որք միանգամ ի Քրիստոս մկրտեցարուք՝ զՔրիստոս զգեցեալ էք. չիք խտիր, ոչ Հրէի և ոչ հեթանոսի, ոչ ծառայի և ոչ ազատի, ոչ արուի և ոչ իգի. զի ամենեքեան դուք մի էք ի Քրիստոս Յիսուս: Ապա եթէ դուք Քրիստոսի էք, ուրեմն Աբրահամու զաւակ էք, ըստ աւետեացն ժառանգք: 29:

Զայնի— Ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա.

Օրհնեալ որ գալոց ես անուամբ Տեառն, և օրհնեցաք զքեզ ի տանէ Տեառն:

Ալէլուիա, Օրթի

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու: Բ. 22:

Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի

Եւ իբրև լցան աւուրք սրբութեան նոցա ըստ օրինացն Մովսէսի, ածին զնա յԵրուսաղէմ յանդիման առնել Տեառն. որպէս և գրեալ է յօրէնս Տեառն, թէ ամենայն արու որ բանայ զարգանդ՝ սուրբ Տեառն կոչեսցի: Եւ տալ պատարագս՝ ըստ ասացելոյն յօրէնս Տեառն, զոյգս տատրակաց կամ երկուս ձագս աղաւնեաց: Եւ ահա էր այր մի յԵրուսաղէմ, որոյ անուն էր Սիմէոն. և էր այրն այն արդար և երկիւղած, և ակն ունէր մխիթարութեանն Իսրայէլի, և Հոգի սուրբ էր ի նմա: Եւ էր նորա հրաման առեալ ի Հոգւոյն սրբոյ՝ մի՛ տեսանել զմահ, մինչև տեսցէ զօծեալն Տեառն. և եկն Հոգւովն ի տաճարն: Եւ իբրև ածին ծնօղքըն զմանուկն Յիսուս՝ առնել նոցա ըստ սովորութեան օրինացն ի վերայ նորա, և նա առ ընկալաւ զնա ի գիրկս իւր, և օրհնեաց զԱստուած և ասէ. Արդ արձակես զծառայս քո Տէր ըստ բանի քում ի խաղաղութիւն, զի տեսին աչք իմ զփրկութիւն քո զոր պատրաստեցեր առաջի ամենայն ժողովրդոց: Լոյս ի յայտնութիւն հեթանոսաց, և փառս ժողովրդեան քում Իսրայէլի: Եւ էին հայրն և մայրըն նորա զարմացեալ ի վերայ բանիցն, որ խօսէին զնմա-

Digitized by Google

նէ։ Եւ օրհնեաց զնոսա Սիմէոն, և ասէ ցՄարիամ մայրն
նորա. ահա սա կայ ի գլորումն և ի կանգնումն բազմաց ի
մէջ Իսրայէլի, և ի նշան հակառակութեան. և ընդ քո իսկ
անձն անցցէ սուր. զի յայտնեսցին ի բազում սրտից խոր-
հուրդք։ Եւ անդ էր Աննա մարգարէ՝ դուստր Փանուելի
յազգէ Ասերայ. սա ինքն անցեալ էր զաւուրբք բազմօք,
կեցեալ ընդ առն ամս եօթն ի կուսութենէ իւրմէ։ Եւ էր
այրի ամաց իբրև ութսուն և չորից. որ ոչ մեկնէր ի տա-
ճարէն, այլ պահօք և աղօթիւք պաշտէր զցայգ և զցերեկ։
Եւ սա ի նմին ժամու յարուցեալ գոհանայր զՏեառնէ, և
խօսէր զնմանէ ընդ ամենեսին՝ որ ակն ունէին փրկութեա-
նըն Երուսաղեմի։ Եւ իբրև կատարեցին զամենայն ըստ օ-
րինացն Տեառն, դարձան անդրէն ի Գալիլեա ի քաղաքն
իւրեանց Նազարէթ։ Եւ մանուկն աճէր և զօրանայր լի ի-
մաստութեամբ, և շնորհք Աստուծոյ էին ի վերայ նորա։ 40։

(Ցընթերցուածն զԱւետարանն հանեն արտաքոյ շիրմին։)

Ձայն Քոր. Սուրբ զԱստուած։ Կեցո. Յոյնժ։ Աղ. Ընկալ Տէր։

---

# ՏԵԱՌՆԸՆԴԱՌԱՋ

## ի փետրուարի 2

### Ի ԳԻՇԵՐԻ

### ՀԵՏԵՒԱԿ ՇԱՐԱԿԱՆ ԱՁ

Մարմնացեալդ ի կուսէն նախայաւիտեան Բանդ. այսօր ի տաճարն եկիր կատարել զօրէնս. վասըն փըրկութեան հեթանոսաց։ Որ յանմարուեստ աթոռ նըստիս բարեբանեալդ ի հրեշտակաց. այսօր ի Սիմէովնի բառնալով ի գիրկս. որ ընծայեսցես ըզմեզ ի կեանսըդ յաւիտենից։ Որ արձակիչդ ես կապելոց պարգևատու ամենեցուն. այսօր հայցմամբ ծերունւոյն արձակեա և զիս ըզբազմամեղս ի կապանաց մահու ի կեանսըդ յաւիտենից։

Քոր. Եւ ես խաղաղու։ Քոհ. Օրհնութիւն և փառք։ Աղօ

### ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԴՁ

Այսօր անըսկըզբնական ծընունդ հայրական ծոցոյ.

Digitized by Google

Բանն եկաւորեալ ի տաճարն. ընծայէ զարարածս Հօր ի յերկինս։ Այսօր բարձեալ եղև ի գիրկս ծերունւոյն. որ բանիւ զարարածս բարձեալ ունի օրհնաբանեսցուք։ Այսօր և մեք համատարածեալքս ընդ ծերունւոյն Սիմէովնի. ըզԲանն համագոյ Հօր և սուրբ Հոգւոյն օրհնաբանեսցուք։

† Այսօր ի տաճարն եկեալ կենարարն եւ ի գիրկսն Սիմէովնի գրգուեցաւ զոր խնդութեամբ ընկալաւ Երուսաղէմ։ Այսօր երկիրս երկինք անուանեցաւ զի Տէրըն տերանց իջեալ յերկնից ի յերկիր և ընծայիլ յաննձն առնու ի գործոց ձեռաց իւրոց։

ԳԼՍ. Լոյս ի լուսոյ ի Հօրէ առաքեցար եւ մարմնացար ի սուրբ կուսէն. զի վերըստին նորոգեսցես զապականեալըն Ադամ։ Դու Աստուած ի յերկրի երեւեցար և ընդ մարդկան շրջեցար. եւ փրկեցեր ըզտիեզերս յանիծիցն Ադամայ։ Քեզ ի յերկնից վըկայեալ Հօր քո ձայն. ասէ դա է իմ Որդի եւ սուրբ Հոգին ըզքեզ յայտնեաց աղաւնակերպ երեւմամբ։

Փխ. Որ ունիս իշխանութիւն մահու և կենաց. Քրիստոս Թագաւոր փառաց ‖ ողորմեա մեզ Աստուած։ Տօնելով ըզյիշատակ կուսի Աստուածորդւոյ մօր. հրճուին հրեշտակք ի յերկինս. և ցընծան դասք առաքելոց և մարգարէից ընդ կուսական տօնս. ողորմեա։ Քեզ միայնոյ մօր եւ կուսի. մաղթեմք հայցելով ի քէն. բարեխօսեա անդադար առ որդիդ քո և Աստուած մեր. փրկել ըզմեզ ի փորձութենէ եւ յամենայն վըտանգից մերոց։

ԾՂ. Զգալուստ քո Քրիստոս այսօր. յԵրուսաղէմ նոր եկեղեցի սուրբ. յաղթական երգով բարեբանեմք ‖ օրհնեալ եկեալ անուամբ Տեառն։ Որ վասն մերոյ փըր-

կութեան յաւանակի նստել յանձն առեր. ընդ մանկունսն բարեբանեալք օրհնեալ: Թագաւոր երկնաւոր. զեկեղեցի քո անշարժ պահեա. եւ զերկրպագուս անուանդ քո պահեա ի խաղաղութեան:

ՇՈՂ. Լուսաւորեա Երուսաղէմ. զարդարեա զամուրս քո. քանզի մերձեցաւ առ քեզ փեսայն երկնաւոր փրկութիւն քեզ շնորհելով պսակեանց սքանչելի փառացն իւրովք: Այսօր ծագեաց քեզ դըշխոյ դուստր Սիօնի. արդարութեան արեգակն Քրիստոս եւ սփռեցան ըզքեւ շնորհըք սուրբ Հոգւոյն մեծապէս պարգեւօք: Այսօր ցնծա սուրբ Սիօն մայր եկեղեցի. փայլեցո զմանկունս քո որպէս զարեգակն. զի անճառ խոնարհութեամբ լցոյց ըզքեզ Քրիստոս թագաւորն:

ՄԾ. Անարատ կոյս Աստուածածին Մարիամ մաքրուհի եւ մայր Քրիստոսի. յարգանդի տարար զանտանելին ամենեցուն. || Օրհնութեամբ ըզքեզ Աստուածածին. մեծացուցանեմք: Ըզքեզ երկնային դուռն զոր եսեան Եզեկիէլ. եւ այրըն զոր ծանեաւ Գեդէոն. սերովբէ հրեղէն վեհագոյն քերովբէից. օրհնութեամբ: Երբեմն խորհրդոյս սոսկալիս ի քեզ տեսանի Աստուածածին. յղութիւն անսերմնական ծնունդ անարատ. կուսութիւն յետ ծնընդեան մնալով անապական. օրհնութեամբ:

ՀԳ. Կենդանարար Աստուած մարդասէր Հօրն. ըզծագողեալըն միաբանական սիրով. լուսաւորեցեր հրեղէն նոր լեզուօք. վասն որոյ եւ մեք այսօր տօնեմք ըզգալուստ քո սուրբ: Զուարճացան քո գալստեամբըն սուրբ առաքեալքն. կոչելով ի միաւորն ըզցըրուեալսն ի միմեանց բազմաձայն լեզուօք.

Digitized by Google

դէս. ոչ եկի լուծանել՝ այլ լնուլ։ Ամէն ասեմ ձեզ՝ մինչև անցցեն երկինք և երկիր, յովտ մի՝ որ նշանախեց մի է, ոչ անցցէ յօրինացն և ի մարգարէից՝ մինչև ամենայն եղիցի։ Որ ոք լուծցէ մի ինչ ի պատուիրանացս յայսցանէ ի փոքունց, և ուսուսցէ այնպէս զմարդիկ, փոքր կոչեսցի յարքայութեան երկնից։ Իսկ որ արասցէ և ուսուսցէ, նա մեծ կոչեսցի յարքայութեան երկնից։ Բայց ասեմ ձեզ, զի եթէ ոչ առաւելուցու արդարութիւն ձեր առաւել քան զդպրացն և զփարիսեցւոց, ոչ մտանիցէք յարքայութիւն երկնից։ 20։

Եւ գան յարևմտից կողմն, մօտ է դրանն եկեղեցւոյն ։

ՇԱՐԱԿԱՆ ԴԶ

Այսօր անսկզբնական։ Այսօր ի տաճարն եկեալ։ 1107։

Զինէ Օրթի

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Մարկոսի։ ԺԳ. 32։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս ասէ.

Այլ վասն աւուրն այնորիկ և ժամու ոչ ոք գիտէ, ոչ հրեշտակք յերկինս և ոչ Որդի, բայց միայն Հայր։ Զգոյշ եղերուք, սկեցէք և կացէք յաղօթս. զի ոչ գիտէք երբ ժամանակն իցէ։ Որպէս այր մի գնացեալ ի տար աշխարհ, թողուցու զտուն իւր, և տացէ ծառայից իւրոց իշխանութիւն, և իւրաքանչիւր զգործ իւր. և դռնապանին պատուէր տայցէ՝ զի արթուն լինիցի։ Արդ արթուն կացէք, զի ոչ գիտէք երբ Տէր տանն գայցէ, յերեկորեայ, եթէ ի մէջ գիշերի, եթէ ի հաւախօսի, եթէ ընդ առաւօտս. գուցէ եկեալ յանկարծակի՝ գտանիցէ զձեզ ի քուն։ Բայց զոր ձեզդ ասեմ, ամենեցուն ասեմ՝ արթուն կացէք։ 37։

Եւ գան ի հարաւային կողմն եկեղեցւոյն ։

ՇԱՐԱԿԱՆ ԴԶ

Լոյս ի լուսոյ ի Հօրէ։ Զքեզ որ հոգւով և հրով։ 1178։

Զինէ Օրթի

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու։ ԺԲ. 49։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս ասէ.

Հուր եկի արկանել յերկիր. և զի՞նչ կամիմ՝ թէ արդէն իսկ բորբոքէր. և մկրտութիւն մի ունիմ մկրտել, և զիա՞րդ

Digitized by Google

փութամ մինչև կատարեսցի: Համարիք եթէ խաղաղութիւն եկի տալ յերկիր. ոչ, ասեմ ձեզ, այլ բաժանումն: Զի եղիցին յայսմ հետէ հինգ ի տան միում բաժանեալք, երեքն յերկուց և երկուքն յերից: Բաժանեսցի հայր յորդւոյ, և որդի ի հօրէ. մայր ի դստերէ, և դուստր ի մօրէ, սկեսուր ի հարսնէ, և հարսն ի սկեսրէ իւրմէ: Ասաց և ժողովրդեանն. յորժամ տեսանիցէք ամպ ծագեալ յարեւմտից՝ իսկոյն ասէք թէ անձրև գայ, և լինի այնպէս. և յորժամ հարաւ շնչեալ, ասէք թէ խորշակ լինի, և լինի այնպէս: Կեղծաւորք, զերեսս երկնի և երկրի գիտէք փորձել, իսկ զժամանակս զայս զիա՞րդ ոչ փորձէք: Ընդէ՞ր և յանձանց իսկ ոչ ընտրէք զարժանն: Յորժամ երթայցես ընդ ոսոխի քում առ իշխան, ի ճանապարհի տուր զհաչիմ՝ զերծանել ի նմանէ. զի գուցէ քարշիցէ զքեզ առ դատաւորն, և դատաւորն մատնիցէ դահճի, և դահիճն արկանիցէ ի բանտ: Ասեմ քեզ, ոչ ելանիցես անտի՝ մինչև հատուցանիցես զյետին բնիոնն: 59:

Ու— տան է Հիւսիսակողմն եկեղեցւոյն:

ՇԱՐԱԿԱՆ ԴԿ

Այսօր ի տաճարն եկիր Փըրկիչ. Եւ ծերունայն ի գիրկս ընկալեալ ասէր արդ արձակես ըզծառայս քո Տէր: Այսօր աշխարհի ցուցար լոյս. Եւ փրկութիւն տիեզերաց Քրիստոս || Աստուած որ մարդացար ես կեցո ըզմեզ: Այսօր իմանալի արեգակն. որ ծագեցար տիեզերաց Քրիստոս Աստուած որ:

Ի սկըզբանէ Բանն Աստուած մարմնացաւ ի կուսէն. այսօր գըրգուեցաւ ի տաճարին: Խայտայր ալեօքըն ծերունին Աստուածորդւոյն ի գիրկս իւր. Եւ օրհնէր զԱստուած ասելով: Արդ արձակես ըզծառայս քո Տէր ըստ բանի քում ի խաղաղութիւն զի տեսին աչք իմ ըզՓըրկողդ Աստուած:

ԶԿՆԻ ՕՐԹԻ

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Յովհաննու: Ա. 1:

Ի Հօրէն լուսոյ.

Ի սկզբանէ էր Բանն և Բանն էր առ Աստուած: 1100:

### ՇԱՐԱԿԱՆ ԲԿ

Ի գալստեան Տեառն դրունք երկնից բանին և: 139:
Մաղթանք. Սաղմոսիւք: Ըստ յայնէն և այլ ելեալ է ... օրհնութիւն: Լցաք առաւօտու. և այլն

### ՀԱՐՑ ԴՁ

Օրհնեմք ըզքեզ որ առաքեցար ի Հօրէ. անճառելի Բանդ Աստուած յանձն առեր մարմնանալ ի սըրբոյ Կուսէն. ‖ Աստըւած հարցըն մերոց: Այսօր եկեր ի տաճարն անհասանելի փըրկիչ. և ի գիրկսըն Սիմէոնի գըգուեցար. Աստըւած: Ուստի եւ Սիմէոն հոգեւոր հընչմամբն աղաղակէր. արդ արձակես ըզծառայս քո Տէր ըստ բանի քում ի խաղաղութիւն. Աստըւած:

Գ. ԸզՏէր ‖ օրհնեսցէք եւ բարձր արարէք ըզՆա յաւիտեան: Օրհնեսցէք զծնեալն յամենասուրբ յորովայնէ. յանարատ ի կուսէն օրհնեալ: Օրհնեսցէք զեկեալն այսօր ի տաճարն. զընկալեալն ի գիրկսըն Սիմէոնի օրհ:

### ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԴՁ

Աթոռ քրովբէական երեւեալ այսօր Սիմէոն. զԱստուածորդին ի գիրկս իւր բարձեալ մարմնով. ‖ զոր զօրք երկնից ի բարձունս հանապազ մեծացուցանեն: Հոգւովըն գոչէր ցընծայր ալեօքըն ծերունին ասելով. սա է Թագաւորն անմահ. զոր: Արտասուելով աղերսէր. արձակեա զիս ի խաղաղութիւն անարատ ծընողի քո բարեխօսութեամբ. զոր:

Եւ [illegible] հոգեւորաց, խորհրդեալ Աւետարան կարդա, և զՔէշերէն քարոզեսցէ [illegible]:

Քառասնօրեայ տըղայ և Տէրն օրինադիր տնօրինաբար եկն ի տաճարն: Եւ Սիմէոն գըգուէր գըրկաքն. և յօրինաց կապից լուծումն հայցէր ի կենաց աւետաբանին:

ՈՂՈՐՄԵԱ ԴՁ

Որոյ առեալ հրաման ի սուրբ Հոգւոյն. չտեսա-նել ըզմահ մինչեւ տեսցէ զօծեալդ. ‖ Տէր աղօթիւք ծերոյն ողորմեա։ Որոյ ընկալեալ էր գիրկս իւր զօ-ծեալդ եւ հայցէր ի կենացդ ըզմահ և արձակել ի խա-ղաղութիւն. Տէր։ Յորոյ այսօր ի գիրկսն գըգուա-ցար. եւ կատարեցեր ըզփափագումն ընծայելոյ քո ի տաճարին. Տէր։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԴՁ

Զոր փառաբանեն ի բարձունս իմանալի զօրու-թիւնքն. այսօր ի տաճարն եկիր յընծայումն Քրիստոս որ ընծայես զարարածըս բարձրելոյ քում Հօր։ Ի գիրկս մարմնով բարձեալ եղեր ի ծերունւոյն. որ բանիւ զարարածըս բարձեալ ունիս Քրիստոս որ վա-սըն մեր մարմնացար ի սրբոյ Կուսէն։ Վասն որոյ եւ մեք ընդ Սիմէոնի գոչեսցուք. որ ի Հօրէ լու-սոյ լոյս ծագեցար մեզ եւ կեանք. փառս մատուցուք զգա-լըստեան քում Տէր։

Առաւօտու Երգ. Արեգակն արդար։ Ի վայելչութիւն փա։ Քարոզ Մայր սուրբ։

Ձ՚նէ Սուրբ Աստուածին Մաղ. Փրկել։ Քար. Վասն լը-սելի։ Քահ. Օրհնութիւն և փառք։ Ե– տող

Սաղմոս և Գէրէ Երեկոյի Նախատօնակին է։ 1204։

Ձայնիւ Ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա.

Տէր ի տաճար սուրբ իւրում, Տէր յերկինս յաթոռ իւրում։

Ալէլուիա, Օրթի

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Ղուկասու։ Բ. 22։

Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի

Եւ իբրեւ լցան աւուրք սրբութեան նոցա ըստ։ 1206։
Ձ՚նէ Աւետարանին զԱրարչականն ասա, չափ և օրն ընէր։
Ձ՚նէ Քար. Խնդր։ Կեցո. ձայնիւ։ Աղ. Քում ամենազօր։

---

## ՃԱՇՈՒ

### ԴԿ

Անսկիզբն Բանն յանսկզբնական ի Հօրէ. եւ սկզբնաւորեալ ի կուսէն մարմնոյ զգեցմամբ. բովանդակեալ յորովայնի եւ ընդ Հօր գոլով եւ սահմանեալ ժամանակաւ ծնեալ լինի ‖ Աստուած եւ մարդ։ Մեռեալ ընդ օրինօք անհիւթականն հողանիւթ գոլով զի զհողածնեալքս Հօրն ընծայեսցէ. Աստուածորդին որ ի ծոց Հօր. տղայ քառասնօրեայ բառնի ի գիրկս ծերունւոյն եւ յայտնապէս ծանուցանի. Աստ։ Վասն որոյ և Սիմէոնին ցընծայր հոգւոյն աղաղակէր ի տաճարին. արդ արձակեա զծառայս քո Տէր ըստ բանի քում ի խաղաղութիւն զի ընդհանուր տեսի զփրկիչդ Աստ։

---

## ՑԵՐԵԿՈՑԻՆ

ՄԵՍԵԴԻ Յիննգիւտն. Մեծացուսցէ անձն։ Զի հայեցաւ։ Քարոզ Մայր սուրբ։

### ՀԱՄԲԱՐՁԻ ԴԿ

Այսօր ի տաճարն եկիր։ Ի սկզբանէ Բանն։ 1212։ Զինչ Քար. Սուրբ զԱստ։ Կեցո. Յոյնէ։ Աղ. Ընկալ Տէր։

---

# ԿԻՒՐԱԿԷ

## ԱՌԱՋԱՒՈՐԻ ԲԱՐԵԿԵՆԴԱՆ

## ՑԱՌԱՒՕՏՈՒ

### ՀԱՐՑ ԴՁ

Փառաւորեալ զանուն քո սուրբ. Աստուած Հար։ 724։

Եւ ապա Պահք առաջաւորին, և փոխ ոչ լինին։

---

# ԵՐԿՈՒՇԱԲԱԹԻ

## Պահոց

ՑԱՌԱՒՕՏՈՒ ՀԱՐՑ ԴՁ. Օրհնեալ ես յաւիտեան։ 1072։

---

Digitized by Google

# ԵՐԵՔՇԱԲԱԹԻ

Պահոց

ՑԱՌԱԻՕՏՈՒ ՀԱՐՑ ԴՁ. Որ վերին մանկունքն։ 1077։

# ՉՈՐԵՔՇԱԲԱԹԻ

Պահոց

ՑԱՌԱԻՕՏՈՒ ՀԱՐՑ ԴԿ. Օրհնեալ Տէր Աստուած։ 1086։

# ՀԻՆԳՇԱԲԱԹԻ

Պահոց

ՑԱՌԱԻՕՏՈՒ ՀԱՐՑ ԴԿ. Աստուած հարցն մ. ։ 1135։

# ՈՒՐԲԱԹ

Յիշատակ Յովնանու մարգարէին

Ի ԳԻՇԵՐԻ Օրհնութեան Ապաշխարութեան, ըստ ձայնին։

## ՑԱՌԱԻՕՏՈՒ

ՀԱՐՑ ԴԿ. ՄՏ.

Ո՛ր զանճառելի ծածկապէս խորհուրդ տնօրէնութեանդ քո. մարգարէիւք առակաւորեալ ցուցեր. Աստուած հարցըն մերոց։ Ո՛ր զանապական թաղումն քո յերկրի նշանակեաց Յովնան. ի փոր կիտին պահելով կենդանի. Աստուած։ Ո՛ր ընդ փրկական քո աւետարանի. գուշակելով զխորհուրդ. Նինուէ քարոզէր ապաշխարութիւն. Աստուած։

Գ. Գործք Տեառն ըզՏէր օրհնեցէք Քաղցրաձայն երգով բարձր արարէք յաւիտեան։ Գիշերք ըզՏէր օրհնեցէք Որ առաքեաց ողորմութեամբ զմարգարէն Յովնան. քարոզել Նինուէացւոցն ապաշխարութիւն. օրհնեցէք ընդ զուարթունս ամենայն ժողովուրդք. եւ բարձր արարէք ըզՀայրն երկնաւոր։ Աղբերք ըզՏէր օրհնեցէք Որ ըմբռնեաց ի փոր կիտին զմա-

խուցեալ մարգարէն. Եւ ծանոյց ըզգթութիւնն անարատ պահելով. գովեցէք ընդ սերովբէսն պաշտօնեայք Քրիստոսի. Եւ բարձր արարէք զէակից Բանին Հօր։ Իսրայէլ ըզՏէր օրհնեսցէ։ Որ լուաւ մարգարէին ի խորոց անդնդոց. Եւ փրկեաց ի դժոխոց ապականութենէ. բարեբանեցէք ընդ քերովբէսն քահանայք Քրիստոսի. Եւ բարձր արարէք զփառակից սուրբ զՀոգին։

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԴԿ

Մարգարէն. ի փորոյ կէտին աղաղակէր եւ ասէր. Տէր Աստուած. Նայեաց յիս. Եւ մի տար զիս հըզօրին այս։ Զայն բարձի. ի խորոց անդնդոց առ Աստուած ողորմած. Եւ Աստուած ձայն աղաղակի խորոյ հասեալ ի լսելիս քո Տէր։ Բարեխօսութեամբ սուրբ Աստուածածնի. Եւ մինչ կոչեմ աղաչեմ. Տէր Աստուած. փրկեա զիս ի յորոգայթէ յաներեւոյթ թշնամւոյն։

ՈՂՈՐՄԵԱ ԴԿ

Ողորմութեանց բաշխող Քրիստոս Աստուած. որ զըթացար ի քո յարարածս. գթա՛ ի յիս ի մեղաւորս. Որ ողորմած ես յամենայնի։ Որ ի բարկութեան զողորմութիւն Աստուած յիշեցեր առ քո ստեղծուածս. յիշեա զիս ըզմեղաւորս. որ ող։ Որ ի ժամանակեան մերձեալ մահու Աստուած փրկեցեր ըզնինուէացիսն. փրկեա զմեզ ի հրոյն յաւիտենից. որ ող։

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԴԿ

Կանխեալ Յովնան առաքելով յանմահութեանց պարգեւողէն. Նինուէի մահաբեր քարոզ։ Յահեղ բարբառոյ մարգարէին զարհուրելով թագաւորին. խոնարհեալ զիջանէր ի սուգ։ Պահօք



Digitized by Google

պատուիրէր ժողովրդեանն պահել առ Տէր. խնդրելով զթողութիւն մեղաց։

Ծագեալ առաւօտ խաղաղութեան յանմահ հօրէ Տեառն Էմմանուէլն. եւ զմահու փարատեաց զխաւար. Ուստի օրհնութիւն նոր երգէին քեզ թագաւոր անմահ Էմմանուէլ. փրկողիդ ի ձեռաց մահու։ Ընդ որս եւ զփրկեալքս պատուական արեամբդ քո սրբոյ. փրկեա Քրիստոս ի հրոյն յաւիտենից։

Յովնան մարգարէն աղաղակէր Նինուէացւոցն. ահա երեք աւուրք եւ այլ ոչ եւս իցէ Նինուէ։ Ձայնի հառաչմամբ պաղատէին առ քեզ գթած. փրկեա զմեզ ի մաչանէն հրաւիրմանէն եւ կեցո։ Բացաւ ընդ լոյս առաւօտուն ողորմութեան քո դուռն. եւ լուր ձայնի տղայոց անմեղաց բիւրաւորաց փրկել ի մահուանէն։ Եւ մեք ընդ նոսին հայցեմք ի քէն փրկիչ ողորմած. փրկեա զմեզ ի տառապանաց գեհենոյն. եւ քեզ փառք յաւիտեանս ամէն։

ՄԱՆԿՈՒՆՔ ԴԶ

Որ առաքեցեր զՅովնան. քարոզել մեծի քաղաքին Նինուէի. յայտնելով զառատ մարդասիրութիւնդ. ընկալ եւ զիմս ապաշխարութիւն։ Ելեալ ի կիտէն. երեքօրեայ թաղմամբ պահելով կենդանին. յօրինակ թաղման քո եւ յարութեանդ. կեցո եւ զիս զմեղօք ըմբռնեալս։ Որ լուար ձայնի աղօթից. երկոտասան բիւրուց եւ մանկանց տղայոց. ներող գթած եւ երկայնամիտ. լուր այժմ եւ ինձ որ կարդամս առ քեզ։

ՑԵՐԵԿՈՑԻՆ

ՀԱՄԲԱՐՁԻ ԲԿ

Ապաշխարութեամբ ապրեցաւ քաղաքն Նինուէա-

ւոց․ է ‖ լըսել ձայնի մարգարէին եղեւ թողութիւն եղաց։ Ընդ այն բանն առ թագաւորն․ պատուէր տայր ողովըրդեանն․ լըսել։ Ի բերանոց մանկանց տըղայոց․ արքայն երկնից յօգնութիւն կոչէին․ լըսել։

# ՇԱԲԱԹ

## Ս․ Սարգսի զօրավարին եւ որդւոյ նորա Մարտիրոսի եւ չորեքտասան զինուորացն

### Ի ԳԻՇԵՐԻ

### ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԱԿ

Ամենասուրբ Երրորդութեանն ընտրեալ ծառայ եւ հաւատարիմ․ յաղթող սպառազէն եւ քաջ նահատակ․ երագահաս սուրբդ Սարգիս․ շնորհաց օթեվան․ ‖ բարեխօս լեր առ Քրիստոս վասն անձանց մերոց։ Թագաւորին երկնաւորի սուրբ զօրապետ եւ մենամարտիկ․ սիրով անմահին խաչեալ յաշխարհէ․ երագահաս սուրբդ Սարգիս․ խաչիւ պըսակեալ․ բարե։ Արեգականն արդարութեան մեծ կարապետ պայծառ արուսեակ․ ցուցեալ յարեւմըտից ի յելս արեւու․ երագահաս սուրբդ Սարգիս․ անշէջ ճառագայթ․ բարե։ Աւետաւոր Հայոց մեծաց դիմեալ ի մէջ երկրի ի հիւսիսոյ․ հողմըն հարաւոյ է դաշտ ծաղկածին․ երագահաս սուրբդ Սարգիս․ տունկ անմահութեան․ բարե։ Առաքելական գինու վառեալ մըտեր ի մեծ հանդէս քաջութեան․ Մարտիրոս որդւովդ ի պարս վըկայեալ․ երագահաս սուրբդ Սարգիս եւ Մարտիրոս մեծ պըսակաւորք․ բարեխօս լերուք առ Տէր վասն։ Գերագոյն պատիւ առեր է Բարձրելոյն Բանին բարեխօս․ կատարիչ խընդըրուածոց լըսող աղօթից․ երագահաս սուրբդ Սարգիս․ գերեաց գերեհան․ բարեխօս լեր առ։ Ցաւալից կենաց մարդկան զօրեղ բըժիշկ սըրբիչ արտասուաց․

նեղելոց դիւրիչ վըշտաց մըխիթար. նահատակաց սուրբըդ Սարգիս. դիւաց հալածիչ. Բարեխօս լեր առ Քրիստոս վասն անձանց մերոց։ Գեղեցիկ անուն բարի քաղցր եւ անուշ պըտուղ շըրթանց հաւատացելոց. ի գիշերի եւ ի տուընջեան յաւէտ կոչեցեալ ընդ ամենայն տեղիս յիշեալ եւ փառաւորեալ. նահատակաց սուրբըդ Սարգիս գերեաց ազատիչ. բարե։ Աղաչաւորս յաւոյ անմահ Բանին եղեալ ի գլուխ մերոյ իշխանին. սուսեր աջոյ վահան հաւատոյ քրիստոսասէր զօրաց եւ զօրապետաց. ամենահաս սուրբըդ Սարգիս ամուր պարիսպ ընտիր հեծելոց. բարե։

ԶՈՎ. Է՛ակից Բանն ի Հօրէ իջեալ յերկնից ընդեձայնիդ. ուստի Գաբրիէլ վերաբերէր զկոյսըն Մարիամ աւետութեամբ յղացեալըն ըզքեզ յորովայնի. Առ Քրիստոս բարեխօսեա վասն անձանց մերոց։ Ընդ ժամանել ձայնի ողջունին Մարիամու առ Եղիսաբեթ. խաղացեր ձայնդ ընդ առաջ Բանին Աստուծոյ յորովայնէ ամլոյն երկրպագելով. առ։ Թագաւորըն բոլորից պարածածկեալ յարգանդի կուսին. զոր ծանօթդ հաւատարիմ տեսեալ Հոգւովըն սըրբով եւ բերանով մօր քո օրհնաբանէիր. առ։

ԱՌ. Ի՛ մաքրագործ Հոգւոյն անօթ ընտրեալ եւ ձիւնափայլ. Թագաւորք երկրի իշխանք աշխարհի. անպակաս գանձուց բաշխող Յակոբ Աղփեան Յուդա Յակոբեան. Բարեխօս լերուք առ Տէր վասն անձանց մերոց։ Երկքորբեան մի տէրութեան խորհուրդ կամաց եւ հաւասարապետք. փողոց հընչմունք բարբառք ատեաց ընդ ամենայն երկիր սուրբքըդ Շմաւոն և Մատաթիա. բարեխօս։ Բանին կենաց կանթեղս քարոզ եւ աւետարանիչ. երգ փըրկութեան հընչումն ա՛ հաւատոյ. առ.

ի մարդկան պարծանք սուրբդ Տիմոթէոս. բարեխօսեա առ Քրիստոս վասն անձանց մերոց ։

ԱՏՈՎ. Աղաչեմք զքեզ Տէր բարեխօսութեամբ սրբոց Անտիլեանց. որք նահատակեցան ի ճակատամարտ պատերազմի յաղթող գտան ընդդէմ թշնամւոյն. բարեխօսութեամբ սոցա Քրիստոս խնայեա ի մեզ ։ Որք առին ըզսպառազինութիւն ըզ զրահըս հաւատոյ սրտից իւրեանց. եւ ընկալան ի գլուխ սաղաւարտ փրկութեան ըզնըշան խաչին սուսեր ընդ մէջ ածեալ զճշմարիտ սուրբ Հոգին. բարեխօսութեամբ ։ Որք մաքրեցին զանձինս իւրեանց տաճար անուանդ քում սըրբոյ. եւ բուրեցին հոտ անուշութեան զաղօթս իւրեանց ի տեղւոջ հեղման սուրբ արեան իւրեանց. բարեխօսութեամբ ։

ՀԳ. Որ առաքեցար ի Հօրէ Հոգիդ անեղ եւ համագոյ. աղաչանօք տնօրինաբար քում էակցին լինել մխիթարիչ սուրբ առաքելոցն. Աղաչեմք զքեզ ողորմեա ։ Որ իջեր տէրաբար յերկնից սաստիկ հողմոյ նըմանն Աստուած յայտնապէս. եւ ի հրեղէն լեզուս բաժանեալ հանգեար ի դասս առաքելոցն. աղաչեմք ։ Որ արբուցեր երկնաւոր գինեաւն իմաստութեան զհոգիս սրբոց քոց առաքելոցն. որք արբուցին ըզտրտմեցելոց որդւոց Ադամայ ըզբաժակն ուրախարար յայգւոյն Եդեմայ. աղաչեմք ։

ՀՆ. Յորժամ յերկնից գոչէ փողն ազդեցութիւն յառնելով ի տիեզերաց ի դատաստանն ահաւոր. յայնժամ աւուր յահեղին յիշեա Տէր եւ ըզմեր ըզննջեցեալսն եւ հանգո ընդ սուրբս քո ։ Յորժամ ճառագայթք աստուածութեանըդ փայլեն ի յարեւելից. եւ դըպրութիւնքս հրաշիւք ցըն բանին յայնժամ աւուր

յահեղ . Յիշեա Տէր եւ ըզմեր ըզննջեցեալսն եւ հանգո ընդ սուրբըս քո ։ Զարհուրեալ զօրացն ար-րածք ի ձայնէ սոսկալեագոյն փողոյն . յորժամ հարկա-նէ հրեշտակապետն եւ կոչէ ի դատաստան զազգս որդւոց մարդկան . յայնժամ աւուր յահեղին յիշեա ։

ԱՄ . Անըսկիզբըն Աստուած անճառելի անբաւ զօրու-թիւն . որ յիսկըզբանց յաւիտենից խնամարկեցեր զոր-դիս Ադամայ . գերանգոյն այսօր շնորհիւ փայլեալ ցու-ցեր ծընընդեամբ զմայր Միածնի քո ընտրելոյ . Աղա-չանօք սորա խընայեա ի մեզ ։ Որ յանէից բանիւ գո-յացուցեր զաշխարհս ամենայն . այսօր մարգարէին տնօրէնաբար ի յԱննայէ արկեր հիմունս նորոյ աշխար-հի . աղաչանօք ։ Ի յամուլ երկրէ այսօր բուսաւ մեզ բարեբեր բոյսըն բարի . շուշան հովտաց ծաղիկըն դաշտաց միամայրըն Մարիամ արմատ տընկոյն անմա-հութեան . աղաչանօք ։

ԽԶ . Որ ի սկըզբանէ իմաստութեամբ հաստատեցեր զե-կեղեցի Հօր իմաստութիւն . զոր նախանըկար տես-թեամբ նըշանակեաց Մովսէս խորանաւն երկնահանգոյն ի Սինա լերինն . լուսաւորեալ փառօքն Աստուծոյ ։ Որ ըզխորհուրդ անապական տնօրէնութեանըդ քո ի սըր-բոյ կուսէն . տըպաւորեալ տապանակն աստուածայի-ն ուխտի կտակարանաց Բանիդ Աստուծոյ . փառաց ան-դիդ տեղի հանգըստեան ։ — Փառք Հօր ։ Որ ի կեն-նըս վերադարձի բնութեանս դարձմամբն Յորդանանու օ-րինակեցեր . եւ ըզբըղնութիւն մահու եւ դըժոխոց կործա-նմամբն Երիքովի տապանակաւ խաչիւն հրաշագործեալ նոր Իսրայէլի . օրհնութիւն քեզ Տէր երգեսցուք մանկունք ։

— Այժմ եւ միշտ ։ Խաչաչարչար սուրբ զենաւ նըշանագործ անուամբ ի խաչ եւ յեկեղեցի . տաճա-

պաշտեցաւ էր գլուխըն Գագայ ի գագաթան տեղւոջն օրհնեալ սըրբոյն Մեսրովպայ. Երագահաս սուրբըդ Սարգիս բազմեաց կործանիչ. բարեխօս լեր առ Քրիստոս վասն անձանց մերոց:

---

ՑԱՌԱԻՕՏՈՒ ՀԱՐՑ ԳԿ. Զինուորութիւնք հրեշտա: 95:
ՄԱՆԿՈՒՆՔ ԱԶ. Զինուորն Քրիստոսի ի Հօր: 105:
ՀԱՄԲԱՐՁԻ (ԱԶ. Զինուորն) կամ ԱԿ. Ամենա: 1218:

---

# ԿԻՐԱԿԷ

## ՑԱՌԱԻՕՏՈՒ

ՀԱՐՑ ԴԿ

Անսկիզբն Բանդ որ յանճառ յաթոռ: Իւր ստորեւն: 754:

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԴԿ

Աստուածածին պայծառ քան զերկինս. որ ի մեզ: 277:

---

# ԵՐԿՈՒՇԱԲԱԹԻ

## Ս. Ատովմանց զօրավարաց

ՑԱՌԱԻՕՏՈՒ ՀԱՐՑ ԳԿ. Զինուորութիւնք հրեշտա: 95:

ՄԱՆԿՈՒՆՔ ԵՒ ՀԱՄԲԱՐՁԻ ԱԿ

Աղաչեմք ըզքեզ Տէր բարեխօսութեամբ սըրբոց Ատովմանց. որք նահատակեցան ի ճակատամարտ պատերազմի յաղթող գըտան ընդդէմ թըշնամւոյն. ‖ բարեխօսութեամբ սոցա Քրիստոս խընայեա ի մեզ: Որք առին ըզսպառազինութեան ըզգրահըս հաւատոյ սըրտից իւրեանց. եւ ընկալան ի գլուխս սաղաւարտ փըրկութեան ըզնըշան խաչին սուսեր ընդ մէջ ածեալ ըզճըշմարիտ սուրբ Հոգին. բարեխօսութեամբ: Որք մաքրեցին զանձինս իւրեանց տաճար անուանըդ քոյ սըրբոյ. եւ բուրեցին հոտ անուշութեան զաղօթս իւրեանց ի տեղւոջ հեղման սուրբ արեան իւրեանց. բարեխօսութեամբ:

---

Digitized by Google

# ԵՐԵՔՇԱԲԱԹԻ

## Ս. Մուքիասանց քօշիցն

ՑԱՌԱՒՕՏՈՒ ՀԱՐՑ ԳՁ. Որք զատանջանս յանօրէ։ 91։

ՄԱՆԿՈՒՆՔ ՆՒ ՀԱՄԲԱՐՁԻ ԲՁ

Ստուգութեամբ տեղեկացեալ. Հարցանելով ըն-
մարգարէն. ով ելցէ ի լեառն Տեառն կամ ով
կացցէ ի տեղւոջ սրբութեան։ Ահա տեսաք ըն-
Սուկաւէտ. լեառըն գիտակ եւ բնակարան. վկա-
յիցն որոց առեալ զողորմութիւն յԱստուածոյ փրկէին
իւրեանց։ Որք բարձին ըզխաչս իւրեանց. խաչե-
ցելոյն խաչակցեցան. դիմելով յօժարութեամբ. առ
սատակիչն որպէս զգառինս ի մէջ գայլոց։ Նոյն եւ
զինքն իսկ տեսանեմք. Պրոբատիկէ աւազանին.
յորս դնին բազմութիւնք ախտաժետաց. առ կին ա-
նըկլով վերըստին ջուրցն յուղման։ Աստ նոր նորո-
գեցաւ. մեզ աւազանըն Սելովմայ. ի բանալ գա-
չըն սըրտից. առ ի մերժել զախտս հոգւոց եւ մար-
մնոց։

---

# ՉՈՐԵՔՇԱԲԱԹԻ

## Պահոց

ՑԱՌԱՒՕՏՈՒ ՀԱՐՑ ԳՁ. Օրհնեմք զքեզ Հայր։ 140։

---

# ՀԻՆԳՇԱԲԱԹԻ

## Ս. Ոսկեանց

ՑԱՌԱՒՕՏՈՒ ՀԱՐՑ ԴՁ. Ցուասցեալքն յանուն։ 97։

ՄԱՆԿՈՒՆՔ ՆՒ ՀԱՄԲԱՐՁԻ ԴՁ

Որք արժանաւորեցայք կոչել յաշակերտութիւն ա-
ռաքելոյն Թադէոսի. եւ աստուածային հրով մա-
քրութեան ոսկի փորձեալ գտայք ի բնակարանն
հրեշտակաց. || ով երանելի սուրբ Ոսկեանք քա-

րեխօսեցէք առ Տէր մաքրել զմեզ ի մեղաց մե-
րոց ։ Որք անհրաժեշտ դաւանութեամբ քարոզեցէք
զՔրիստոս և դրունելն թագաւորութեան . մըկըրտելով
զզքայլ նահատակսն . և յակունս Եփրատայ ի ծաղկա-
զարդ վայելչութիւնսն . ով ։ Որք անպարտելի Յաղ-
թեցէք ի հրապուրանաց որդւոյ թագաւորին . չարչարեա-
լք վասն Քրիստոսի . արագապէս խողխողեցայք պա-
տարագ ընդունելի . ով ։

# ՈՒՐԲԱԹ

Պահոց

ՑԱՒՍՒՕՏՈՒ ՀԱՐՑ ԳԿ . Բանդ Աստուած որ ի ։ 143 ։

# ՇԱԲԱԹ

Ս . Սահակայ Պարթեւի Հայոց հայրապետին

Ի ԳԻՇԵՐԻ ՕՐՀ . ԴԿ . Արմատ ճշմարիտ Աստ ։ 838 ։
(կամ զԹարգմանչացն առա ԱԿ . Որք զարդարեցին անոր ։ 870 ։)
ՑԱՒՍՒՕՏՈՒ ՀԱՐՑ զԹարգմանչացն առա ԱԿ . Որ զլոյս ։ 879 ։
(կամ զԹարգմանչացն առա ԴՁ . Աքանչելագործ Աստուած ։ 874 ։)
ՄԱՆԿՈՒՆՔ ԵՒ ՀԱՄԲ . ԴԿ . Որ յարմատոց ։ 876 ։

# ԿԻՒՐԱԿԷ

ՑԱՒՍՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԴԿ

Որ յաճեղակերպ աթոռ նստիս և ընդ Հօր ես ։ 758 ։

ՄՆԾԱՑՈՒՍՑԷ ԴԿ

Աստուածածին մայր լուսոյ . արեգականն արդա ։ 710 ։

# ԵՐԿՈՒՇԱԲԱԹԻ

Ս . Պիոնի քահանային եւ Մարկոսի Արեթուսայ ե-
պիսկոպոսին եւ Կիւրղի սարկաւագին եւ Աբդեայ
եպիսկոպոսին եւ Որմզդանայ եւ Սայենի եւ Բե-
նիամինի սարկաւագին

ՑԱՒՍՒՕՏՈՒ ՀԱՐՑ ԴՁ . Սուրբ ես Տէր զօրու ։ 98 ։

# ԵՐԵՔՇԱԲԱԹԻ

## Ս. Ղեւոնդեանց քահանայից

### Ի ԳԻՇԵՐԻ

### ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԴՁ

Որ յառաջագոյն սահմանեցեր ըզփրկութիւն հայաստանեայց. շնորհելով մեզ հրաշափառ զերանելին ըզսուրբ Գրիգոր. օրհնեմք ըզքեզ ընդ զօրս անմարմնականացըն Հայր ամենակալ։ Որ նորին դաւանութեամբըն խաչակից քեզ ընտրեցեր ըզդասըս քահանայից. շնորհաբաշխ ծնութեամբ կարգեալ հովիւս եւ վարդապետս. գովեմք ըզքեզ ընդ զօրս անմարմնականացըն Որդիդ միածին։ Որ մաքրութեամբ առաքինի եւ փրկական հաղորդութեամբ. ըզգինուորեալսն անուանըդ քո պայծառացեալ արեամբն իւրեանց յաղթող մարտիւ պսակեցեր. բարեբանեմք ըզքեզ ընդ զօրս անմարմնականացըն Հոգիդ ճշմարիտ։

† Օրհնեմք ըզքեզ շնորհատու բարեաց. որ ընտրեցեր յորովայնէ ըզհրաւիրեալսն ի սկըզբանէ փառաց քոց հաղորդս. Խընայեա ի մեզ մաղթանօք սոցա։ Սահակայ եւ Յովսեփայ սուրբ հայրապետացն. Ղեւոնդեայ սուրբ վարդապետըն հրամանաւ լուսաւորել զարիական քո ըզպատուաճգէնան-խընայ։

ՅՈՎ. Այսօր ցընծան հրեշտակք ի յերկինս. յէջմա-կաւ հողանիւթ հրեշտակին որք համագունեալք ձայնիւ բարբառոյ երգեն զօրհնութիւնս Հօր ի բարձունս։ Այսօր ցընծան հոգիք արդարոց. նահապետաց եւ մարգարէից ձայնակից լինել մեծին ի ծնունդըս կանանցն երգեն զօրհնութիւնս Որդւոյն միածնի։ Այսօր ցընծան դասք առաքելոցն. տօնախըմբելով զյիշատակ մեծի

Digitized by Google

Մըկըրըտչին. որ առաքելոցն է սկիզբն և մարգարէից լըրումն. ընդ նոսին և մեք բըղխեցելոյն ի Հօրէ երգեմք ըզփառս ի բարձունս ։

ԳՐԻ. °Հրաշափառ Աստըւած և միշտ բարեխնամող. որ յառաջ գիտութեամբ ըզփըրկութիւն հայաստանեայց ըզեկըղըգրնաւորեալ. ի պարթեւական մեղապարտ ազգէն լուսաւորիչ մեզ շնորհեցեր. ‖ վասն որոյ բարեխօսութեամբ սորա փըրկիչ կեցո ըզմեզ. այժմ և ի քո յահաւոր գալըստեանն ։ °Հրաշալի զարմացմամբ երանելին սուրբ Գրիգոր. զանտանելի ըզչարչարանս ի յանձն էառ. և երիւք հընգաւք ամօք ի մէջ թունաւորացըն բնակէր. առ նըղընդային տանջանօքն ի վիրապին. վասն ։ °Հրաշագործ քո բանիւդ և մեծ զօրութեամբդ. ելեալ բըժըշկէր ըզհարուածեալսն ի դիւաբախ սաստից. երկըրպագուս առնելով զամենեսեան սուրբ Երրորդութեանդ. վասն ։

ԻԳՆ. Որ հրաւիրեցեր զյառաջագոյն ընտրեալսն ի սկըզբանէ աշխարհի. ի հարսանիսն անապականն կոչելով յուրախութիւն ընդ բազմելոցն յառագաստին զաստուածազգեացն. ‖ աղաչանաւք սորա կեցո ըզմեզ փառաց թագաւոր ։ Որ յաթոռըս քերովբէականըս վերանըստեալ հանգչէիր Որդի Աստուծոյ. հաճեցար խոնարհութեամբ բառնալ ի գիրկըս յորդւոց Ադամայ. աղա ։ Որ ըզբաժակ անմահութեան սիրոյ քո արբեալ երանելին Իգնատիոս. որպէս ցորեան աստուածային գազանաց մանրեալ ժանեաւք հաց սուրբ զըտաւ Աստուծոյ. աղա ։

ՄՐԳ. Այսօր ժողովուրդք որք ի հեթանոսաց. հրաւիրեալք յառաջագոյն մարգարէիւք գալ առ Աստուածն Աբրահամու յերկըրպագութիւն. օրհնեցէք ըզՏէր

յերկինս ընդ երկնաւորացն ։ Այսօր որդիք դստեր վերին Սիովնի․ շինեալք ի վերայ հիման առաքելոց եւ մարգարէից․ որք և ընկալէք զաստուածութեան վէտակ Հոգւոյն ի յաղբերացն Իսրայելի յեկեղեցիս սըրբոց․ օրհնեցէք զՏէր յօրհնութիւնս ի Նոր ։ Այսօր վերին զօրացըն համանմանեալ․ դասք նահապետաց եւ մարգարէից․ երգեն Աստուծոյ զերգըս հոգեւորս․ և յիշատակի սոցա երգեմք եւ մեք զփառս ի բարձրեալն ։

ՀԳ․ Առաքելոյ աղաւնոյ․ իջանելով մեծաձայն հընչմամբ ի բարձանց․ ի նմանութիւն լուսոյ փայլման հրաշալինեաց անկիզելի զաշակերտսն․ մինչդեռ նըստէին ի վերնատանն ։ Աննիւթականն աղաւնի․ անքըննելի որ քննէ զխորս Աստուծոյ․ զոր առեալ ի հօրէ պատմէ զահաւոր և զզարհուրեցուցանող գալստեանն․ զոր քարոզեցին համագոյականն ։ Օրհնութիւն և բարձունս․ երգեցին ի հօրէ Հոգւոյն սըրբոյ․ որով առաքեալքն արբեցան անմահական բաժակաւն․ եւ հրաւիրեցին զերկիրս ի յերկինս ։

ՀԴ․ Ժամանակ դարձի իմոյ եհաս ի յերկիր․ ‖ Որդ Տէր ընկալ ըզծառայս քո․ եւ Հոգի քո բարի առաջնորդեսցէ ինձ ի յերկիր ուղիղ ։ Խոստովանող Հոգին որ ելից զունայնութեան ընթացս աշխարհի․ Որդ ։ Ի վերջնումն աւուր մեծի յորժամ առնես այցելութիւն քոյոց սիրողաց յայնժամ խնայեա ի ծառայս քո․ Եւ Հոգի ։

ՄԾ․ Ընդ քեզ օրհնութեամբ մեծացուցանեմք ։ Որ ընդ Բանն Աստուած յարգանդի կրեցեր Սրբուհի անարատ․ եւ անճառապէս ծընար զվերաձգողն երկնից․ Ընդ քեզ ։ Որ էիր լուսոյն արժանի եղեր բնակարան ի քո զիրկս․ եւ արեգականն արդարութեան եղեր արեւելք․ Ընդ քեզ ։

Digitized by Google

Խզ. Որ հաստատեցեր բանիւ զեկեղեցի քո Քրիստոս ի վերայ առաքելական վիմի. եդեր ի սմա զերգս Հոգեւորս։ Կանգնեալ ի սմա սեղան սրբութեան. բաշխէ զմարմին եւր եւ զարիւն. եւ տայ ի սմանէ մեզ նորոգութիւն. ի թողութիւն մեղաց մերոց։ —Փառք Հօր։ Իջեալ Հոգւոյն սրբոյ. աղաւնակերպ երեւմամբ. ի վերայ մարմնոյ եւ արեանն Տեառն. ի բժշկութիւն հոգւոց մերոց։

—Այժմ եւ միշտ։ Որ ըզմերկացեալսն յանձառ լուսոյն. ըզգեցուցեալս ի գոյն այծեաց. որոշեցեր ի սուրբ հօտէն ընտրեալ ըզքոյսն հաւաքեցեր. խնայեա ի մեզ մաղթանօք սոցա։

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

ՀԱՐՑ ԴԿ

Որ անեղանար փառաբանիս յանմարմնոց. քահանայք սուրբ լուսածնունդ զաւակք. ըզքեզ բարեբանեմք Աստուած հարցըն մերոց։ Որ ի չարչարիլ քո սրբոց քարոզչացն. պըսակեալ ցուցեր զՀայաստան աշխարհս. ըզքեզ։ Որք արբին ըզհուրըն կենդանի ընդ հրաւիրեալսն ի վերնատանն. յորդաբուղխ բանիւ չնորհաց լուսաւորու եղեն մանկանցն. արեամբ մըկըրտեցան ընդ քեզ. Աստուած։

Գ. Ըզտէր Ամենայն ազգ եւ ազինք ամենայն գործք Աստուծոյ. զթագաւորն ամենեցուն օրհնեցէք զՀայրն երկնաւոր եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան։ Որ հալածեաց զխաւար մեղաց ի տանէ թորգոմական. զհանդիսադիրն ամենեցուն գովեցէք զԱստուածորդին. եւ բարձր։ Որ պըսակեցն ըզՀայաստան նորաքանչ լուսաւորչօք. բարեբանեցէք ըզսուրբ Հոգին որդիք լուսոյ նոր Իսրայէլ. եւ բարձր։

Digitized by Google

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ ԴԿ

Զքեզ Աստուածածին աղբիւր անապատ լուսոյ: 282:

ՈՂՈՐՄԵԱ ԴԿ

Արեգակն արդարութեան ի Հայաստան ծագեալ. պայծառացուցեր սուրբ զԵկեղեցի հեղմամբ արեան սրբոցն. մաղթանօք սոցա խնայեա ի մեզ պարգեւատու բարեաց. եւ ողորմեա քո արարածոց: Պանծալի սուրբ զաւակօք հովիւքն զլուսաւորութիւնք. հրով հոգւոյն շիջուցին զզրոյցն երկրպագաշտ Պարսից. մաղթանօք: Պարթեւական տեսանողին յառաջնորդ ազդեցութեամբ. զՀաւատոյ որդին սրբոյն Գրիգորի պսականազարդ տեսեալ. մաղթանօք:

ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ ԴԿ

Երկնային հրաւիրակօք կոչեցեալք ի սկըզբանէ. փրկական Բանին պատմողք եւ պարծանք Հայաստանեայց. դասակցեալք ընդ զօրս անմարմնականաց: Ըզվիշապն անդընդային նըմանեալ փարաւոնի. զգազանացեալ ըզթագաւորըն զործակցօք չարին սուզեալ. զյաղթականն երգեն զօրհնութիւնըս Տեառն: Հաւատոյ զինուք վառեալ մամիկոնեան զօրավարքն. յաշխարհօրէն պատերազմին մխայեալն եկեղեցւոյ. Անճառից եղեւ ժառանգորդ բարեաց: Ախտակցորք արտասուեսցուք զուրացողըն հաւատոյ. ընդ սրբոց հայրապետացն երգելով զփառս ի բարձունս. փրկագին ըզմեզ մաղթանօք սոցա:

ՄԱՆԿՈՒՆՔ ԴԿ

Անճառելի Բանդ Աստուած որ վասըն մեր ելեր ի խաչ. բարձրացար ի մէջ երկրի բարձեր զյանցանս նախաստեղծին. գերահրաշ զօրութեամբ յաղթեցեր մահու. յարուցեալ երեքօրեայ լոյս ծագեցար տիեզե-

Digitized by Google

րաց ։ Դաշտակարգեալ հողեղինացս ընդ հրեղինաց աննիւթ գոյից . երջանիկ ուրախութեամբ կատարեցան յանօրինաց . զի ընկալցին ի քէն Քրիստոս զանապական փառաց պսակն . երեւեալք լուսազգեացք յաւուր մեծի քում գալստեանն ։ Ընդհանուր քարոզեցին զբանըդ կենաց ընդ տիեզերս . թօթափեալ ըզգօսն մահու զուարթնոց երկնից հետեւեցան . ժուժկալեալք արեանբար զժանիս մահու խորտակեցին . իմաստուն երեւելով ընդ փեսային մտին յառագաստն ։ Լուսաւորիչն ամենեցուն Ղեւոնդիէ սուրբ վարդապետն . խոհական մեծ խորհրդով խրատեալ լեզուաց զաշակերտեալսն . ծաւալեալ լոյս գիտութեան յոգիս որանց կատարելոց . կամաւոր յօժարութեամբ կատարեցան սիրով Փրկչին ։ Հուր սիրոյ կենարարին բորբոքեցաւ յոգիս սրբոցն . ձայն տուեալ խրախուսեցին դիմեալք ի մահ յօժարութեամբ . ղեկավարք հոգեւորք զայլս մեղաց խորտակեցին . ճանապարհ մեզ հորդեցին ի յերկնային նաւահանգիստն ։ Միակերտեալք արեամբն իւրեանց որբին զբաժակ մահու Փրկչին . յառաջեալ յամենեցունց Ցովսէփ ընտրեալ աշակերտացն . նորահրաշ սիրով լցեալ և նահատակ բարի ցուցաւ . շինեցաւ տաճար փառաց սրբութեան անմահ Բանին ։ Ուսուցիչն ամենեցուն երկրպագել քում տէրութեանդ . չարչարեալք որինաբար ընդդէմ մահու չար իշխանին . պատրաստեալք ի պատերազմ զպատրանս չարին խափանեցին . Ջուր կենաց մեզ արբուցին ըզհուր մեղացըն շիջուցին ։ Ոահ լուսոյ մեզ ծանուցեալ զանգիտութեան խաւարն ելոյծ . Սահակ սուրբ հօտապետ սրովբէական բարեացն հագորդ . վերբերիչ վարուց բարեաց վանիչ չարին պաշտօնէից . տարփացեալ աննման լուսոյն վերասլացաւ ի

նել ընդ մեզ մինչ ի կատարած. անանջրպետ…տդ
ի քէն վարժողաց եւ այցելու մեղաւորաց որսացելոց ի
բանսարկուէն ի խաւարային նորա կամս. քաղ-
ցրութեամբ քո Տէր խնայեա ի մեզ: Հեղմամբ
արեան սրբոց քոց հօտապետաց. զեկեղեցւոյ քո
ցրուեալ մանկունս ժողովեա յուրախութիւն ըզվա-
րատեալս տրտմութեամբ եւ արտասուաց յորդահոս
բղխմամբ. փրկութեան մերոյ պարգեւաց բաշ-
խող: Մաղթանօք սոցա զթացիր ի մեզ. անխա-
կալ եւ ամենառատ. որ ընտրեցեր ի մարդկանէ
չարչարանաց քոց զուգակիրս եւ զերագունից բարեաց
ժառանգորդս. օրհնութիւն քեզ Տէր երգեսցեն
մանկունք:

Կա Բ Ձ

Երգեսցուք ձեզ երգս. ըզհրեշտակական ըսագ-
ձայնս. յաւէժս եւ վայելուչս. մըտերիմս եւ նըր-
բաղեղանս. || Ծվ սձօ … սուրբ Ղեւոնդեանս:
Առաւել պարծիմք ձեօք սուրբ հօտապետք Քրիս-
տոսի. յօրինեալք եւ յարդարեալք. տաճարք սուրբ
մաքրեալք. սեթեւեանք տէրութեան երկնաւոր թա-
գաւորին. Ծվ: Որք եկեալ հասեալք լինէին.
սեւաւգունդ զօրքն Պարսից. զի յափշտակեսցեն զա-
ռաջնորդսն Հայաստանեայց. ըզսո: Որք չուեալ
գնացեալք լինէին. ի պալատն անօրէն թագաւորին.
զի վըկայեսցեն ճըշմարիտ սուրբ Երրորդութեանն.
սո Ծ: Երանելեացն ի մարտ մըտեալ. երանե-
լեացն ի մարտ մըտեալ. զի վերաւորեսցեն ի մահ
ըզբելիար եւ կործանեսցեն ըզզօրութիւնս թըշնամե-
ւոյն. սո Ծ: Որ խիզախէրն յափշտութիւն պարտեան.
որ խիզախէրն յափշտութիւն պարտեան. ընդ մեծ մաքա-

ամումբն սրբոց ծնընդեան եւ օրացն. ընդ սոսա՟ Ծ: սուրբ Ղեւոնդեանս: իսկ ի հեղմանէ արեան ձերոյ. հոտ անոյշ բուրեաց ի յերկինս. եւ հոտոտեցաւ Տէր իբր հոտ անուշից ընդ կամաւոր պատարա-գըն ձեր. || Ո Ծվ սուրբ Ղեւոնդեանք: Որք համբարձայք ի կաճառըս սերովբէից. եւ ի դա-սըս քերովբէից. բարեխօսեցէք առ Տէր վասն անձանց մերոց. Ո Ծվ:

# ՁՈՐԵՔՇԱԲԱԹԻ

Պահոց

ՑԱՌԱՒՕՏՈՒ ՀԱՐՑ ԴՁ. Որ փառօք Հօր հան: 146.

# ՀԻՆԳՇԱԲԱԹԻ

## Ս. Վարդանանց զօրավարաց եւ այլոց զօրականաց Հայոց

ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԴԿ

Նորահրաշ պսակաւոր եւ զօրագլուխ առաքինեաց. վառեցար զինու Հոգւոյն արիաբար ընդդէմ մահու. Վարդան քաջ նահատակ որ վանեցեր ըզթըշնամին. վարդագոյն արեամբըդ քո պսակեցեր զեկեղեցի: Երկնաւոր Թագաւորին զինու յաղթեալ պատերազմին. խաչական իմաստութեամբ խոհեմացեալ անճառապէս. Խորէն խորհրդական եւ ծանուցեալ անուն բարի. խաչելոյն վըկայ եղեալ հեղմամբ արեան պսակեցաւ: Բը-նական լուսով լցեալ արիացեալըն քաջն Արտակ. Թա-թուեալ ի կարմրութիւն բոսորային բըղխեալ աղբերն. զփըրկականն ըմպեալ զբաժակ եւ մըկըրտեալ արեամբն իւրով. դասակցեալ ընդ անմարմնոցն Երրորդութեանն երգել ըզփառս: Սըրբափայլ զգեստուք պճնեալք ի յերկնաւոր հանդիսադրէն. Սրբոյ Երրորդութեամբըն զօրա-ցեալ վանեալ զամուրըս բանսարկուին. Հըմայեակ հօր

ընծայեալ որդւոյ գոլով չարչարակից. հոգւովն յաղթեալ պատերազմին եւ չարասէր թագաւորին: Էական բարւոյն դիտմամբ ընդդէմ մեղացըն վառեցար. տարագնաց եղեր յերկրէս պարակցեալ ընդ անմարմնոցն. Տաճար զարմանալի տաճար եղեալ Երրորդութեանն. տէրունեան սուրբ խորհրդոյն տուն եւ տեղի արժանացեալ: Մատուցեալ ըղձանօք փափաքան յուսոյն գրանիւք ծածկեալ. զփրկականըն սաղաւարտ ի գլուխ եդեալ զնըշան խաչին. վահան վէհ երեւեալն որ մանկութեամբ նահատակեալ. խաչելոյն վկայ եղեալ պըսակեցաւ արեամբն իւրով: Իբր հօտ անոյշ ողջակիզեալ մատուցանէր զինքըն նուէր. բանաւոր պատարագաւ ընծայելով Հօր ի յերկինս. Արիւնըն ցանկալի արդարութեամբըն ձոխացեալ. իմաստութեամբ պայծառացեալ յեօթնարփեան շնորհաց Հոգւոյն: Երկոքումբք հարազատօք ընտրելագոյն նահատակօք. յառաջեալ յամենեցունց գլուխ եւ աւագ մարտիրոսաց. Նախաշաւիղ գոլով բարեաց յառաջադէմըն Գարեգին. ընկալեալ ըզբրաբիոնըն յաղթանակ նահատակացն: Բազմկական խումբ հազարաց եւ երեսնից թիւ ընդ վեցից որք ընդ նոսին նահատակեալ արիաբար պատերազմաւ. եւ հեղին զարիւնս իւրեանց ի նորոգումն եկեղեցւոյ. ընդ նոսին պըսակելով ի յերկնաւոր հանդիսադրէն:

Զանձառելին է հետն —— : 1230:

Հգ. Աղբիւր կենաց բաշխող շնորհաց Հոգւոյդ իջեալ ի բարձանց. զանապական պարգեւըս քո բաժանեցեր յառաքեալսն: Որ ի վերայ ջուրցըն գոլով ստեղծանէիր զարարածս. իջեալ ի ջուրս աւազանին ծնանիս որդիս Աստուծոյ: Որ զարդարեալ նորոգես միշտ ըզնոր քո զեկեղեցի. պէս պէս շնորհաց քոց պարգեւօք փայլեն մանկունըք սորա:

ՀՆ․ Խնդրեմք ի քէն Թագաւոր փառաց փառաւո-րեալդ ի զաւրութեանց․ Ընծենեցեալսն մեր ընկալ մարդասէր Տէր․ եւ հանգո ընդ սուրբս քո։ Ցորժամ գաս փառօք Հօր դատել զերկիր արդարութեան արե-գակն․ ընծենեցեալսն։ Ի՞ նստել քո յատենի դա-տաւոր ահեղ Քրիստոս փրկիչ մեր եւ յոյս․ ընծենե-ցեալսն։

ՄՍ․ Աստուածածին սուրբ կոյս անհարսնացեալ Մարիամ․ որ օրհնեալդ ես ի կանանց․ զքեզ օրհնեմք միշտ որ արժանիդ ես մեծացուցանել մեք։ Անապական տա-ճար և աստուածային լուսոյ․ որ ի քեզ փեսայացեալ Բա-նըն կենաց բնակեցաւ․ զքեզ։ Հուրըն կենդանի որ ի մորենին վառեցաւ․ զոր անվընաս յարգանդի քում կրեցեր և ծընար Աստուած և մարդ․ զքեզ։

ԽՁ․ Խաչի քո Քրիստոս երկրպագեն արարածք ամե-նայն․ որ ի փրկութիւն մեզ կանգնեցաւ․ սա մեզ ե-ղիցի մեզ պահապան յաղթող ապրեցուցանել զմեզ ի պատրանաց Թշնամւոյն։ Ի սմա բարձրացար բար-ձողդ անիծից․ որ փառաւորեալդ ես ընդ Հօր․ ժողո-վեսցէ ընդհեռացեալսն կենսաբեր փայտիւն․ ապրեցու-ցանել։ — Փառք Հօր։ Սովաւ լուսաւորեցան արարածք ամենայն․ սմա պաշտէին որդեգրեալքն ի մեղաւորէ բանտին որ ազատեաց զմեզ ի պատրանաց Թշնամ-ւոյն։

— Այժմ և միշտ։ Գոհութեամբ փառաւորութիւն Եր-րորդութեանդ նուագեմք․ բազմութեամբ պըսակելոցս զմեօք մածեալ առաքինեացս․ Եկեղեցի՞ք Հայաստա-նեայց․ պայծառապէս զարդարեցան․ ունելով միշտ բա-րեխօս ընծընծնութիւն մարտի սոցա։

ՀԱՐՑ [illegible] Դ Կ․ Որ անդադար։ 1229։

Digitized by Google

ՄԱՆԿՈՒՆՔ ԴԿ. ՍՏ.

Արիացեալք առ հակառակսն. քաջութեամբ առ: 1045:

---

ՑԵՐԵԿՈՑԻՆ

ՀԱՄԲԱՐՁԻ

(ԴԿ. ՍՏ. Արիացեալք առ հակառակսն: 1045:) կամ ԴԿ. Նորահրաշ պսակաւոր և զօրագլուխ առաս: 1234:

# ՈՒՐԲԱԹ

Պահոց

ՑԱՌԱՒՕՏՈՒ ՀԱՐՑ ԴԿ. Ցաւխտենից Աստուած: 152:

---

# ՇԱԲԱԹ

Սրբոց հարիւր եւ յիսուն հայրապետացն կոստանդնուպոլսի Ս. Ժողովոյն

Ի ԳԻՇԵՐԻ ՕՐՀ. ԳՁ. Այսօր սրբոց հայրապետ: 934:
ՑԱՌԱՒՕՏՈՒ ՀԱՐՑ ԳՁ. Որ էիր յառաջ քան զյա: 938:
ՄԱՆԿՈՒՆՔ ԳՁ. Ով հրաշալի նախահարք միշտ: 939:

---

ՑԵՐԵԿՈՑԻՆ

Քարոզ Ասասցուք. է Նի-:
ՀԱՄԲԱՐՁԻ ԴԿ. Բանն որ ընդ Հօր: Եօթն տառն: 185:
Քար. Վասն խաղ: Աղ. Հայր գթած: Փխ. Աստ օրհ:
Քար. Խնդրեսցուք: Կեցո. է Նի-: Աղ. Թագաւոր խա:

Եւ յորժամ զՀամբարձին աւարտին, յետ զՀարականն ընթերցեալ նո-րանին, յօրինակ արտաքսելոյն Ադամայ ի դրախտէն, և ասեն ան-բոյ՝ մինչև ի Ղազարու յարութեան շաբաթ երեկոյն: Եւ յայս մի-ջոցս որ համբարձեն պահեցաւորանն, և որ քաղցրացուցանեն ի Հա-ւատամքին և ի կեցոյն ի ժամ ժողովրդեանն, Ասասցուք և կեցո է Նի-, և առաւօտեան ժամերգութեան աւետարան որ ըն-թեռնուն Տեառն՝ այլ շարականաց, 169, որպէս և ի փոխն խաչի, և ի ճաշու որ առէ Հանգստեան շարական:



Digitized by Google

# ԿԱՐԳ

## ՄԵԾԻ ՀԻՆԳՇԱԲԱԹԻ ՈՏՆԼՈՒԱՑԻՆ

### ԸՍՏ ՈՐՈՒՄ ԱՍԱՑՆ ՅԻՍՈՒՍ
### ԹԷ ՕՐԻՆԱԿ ՄԻ ԵՏՈՒ ՁԵԶ ԶՈՐ ԱՐԱՐԵԱԼ Է ՍՐԲՈՑՆ
### ԵՓՐԵՄԻ ԽՈՐԻՆ ԱՍՈՐԻՈՑ ԶՈՐ ԹԱՐԳՄԱՆԵԱՑ ՍՈՒՐԲ ԴԻՏԱՊԵՏՆ
### ՀԱՅՈՑ ՄԵԾՆ ԳՐԻԳՈՐ ՎԿԱՅԱՍԷՐ

Յերեկոյի ոտնալուային յետ կատարման սուրբ պատարագին, ի դասաներոյք ժամուն ժողովին ի դասն եկեղեցւոյն, պատրաստ ա-նելով շուրջ խորհրդական լուացմանն։ Եւ դնեն շուրջ Աւե-տարանն ի վերայ սեղանոյ առաջի եկեղեցւոյն, և շինեալն սուրբ նշանն դան ի յետս ... Եւ ծխեալն երկու ի յետս աւա-զանոյն։ Եւ կացցեն յաջմէ և յահեկէ աւազանին, հանդերձ մաշ-կեօք լուացելովք, և անօթ ... խնկովք։

Եւ սարկաւագն քարոզէ.

*Եւ ևս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք. ընկալ կեցո և ողորմեա։*

Եւ այս եղանակաւ և կամ ըստ այլ ոք ի գլխաւոր երգեցողաց իցէ, կամ վանաց երէց, կատարիչ գործոյն, որում հրատարակ... փառաւոր օրն, ասէ.

*Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ, այժմ և միշտ։*

Եւ սկսանի հանդերձ քաղցրաձայնութեամբն շարականերոյս սաղմոսն ողջոյն.

48. *Յօղեա յիս մշտկաւ և սուրբ եղէց, լուա և քան զձիւն սպիտակ եղէց։*

*Փխ.* *Ողորմեա ինձ Աստուած, ըստ մեծի*։ 415։

Առ· *ՇԱՐԱԿԱՆ ԱԿ*

*Այսօր կանգնեցաւ աւազան մկրտութեան*։ 393։

Առ սարկաւագն քարոզէ.

*Եւ ևս գոհութիւն և երկրպագութիւն մատուցուք Տեառն մերոյ և փրկչին Յիսուսի Քրիստոսի, որ է հա-*



Digitized by Google

ռագայթ փառաց, և ծագումն էութեան անսկզբնակա-
նին Հօր. որ նոյն ինքն այսօր անբաժանելի գոլով յէա-
կան լուսոյն, խոնարհեցոյց զինքն յազգատ բնութիւն
մեր, առեալ զկերպարանս ծառայի. կատարեաց զամե-
րինական փրկագործութիւնն, լուաց զոտս աշակերտացն
յօրինակ մեզ։ Աղաչեացուք և խնդրեացուք ի Նմանէ, զի
այժմ խոնարհեսցի՝ մարդասիրութեամբն իւրով ի ժողո-
վարանս մեր, և լուացմամբ երևելի ջրովս այսմիկ շնոր-
հօք սրբեսցէ զաներևոյթ հոգիս մեր ի մեղաց մերոց։
Ամենակալ Տէր Աստուած մեր կեցուսցէ և ողորմեսցի։

Եւ ժողովուրդքն ասեն ի Նմա երեք Տէր ողորմեա։

Եւ ապա եպիսկոպոսն կամ աւագերէցն ասէ զաղօթս զայս.

Փառաւորեմք զքեզ Տէր մեր և փրկիչ Յիսուս Քրիստոս՝
միածին Որդի և բան Հօր, Տէր և արարիչ հրեշտակաց
և մարդկան, Աստուած հուր կիզելոյ. որ և հրեղէն զօ-
րութիւնքն զարհուրեալ սարսափեն նայել ի պատիւ փա-
ռաց աստուածութեանդ քո. ուստի և սերովբէքն թևա-
ւքօղեալ ծածկեն զդէմս իւրեանց՝ անդադար փառաբա-
նութիւն մատուցանելով առաջի աթոռոյ տէրութեանդ
քո։ Դու Տէր և այժմ ի լրման ժամանակի փրկութեանս
մերում հաճեցար լինել մարդ ի սուրբ և յանարատ կու-
սէն Մարիամայ. և ընդ ամենայն անցանելով՝ բաց ի մե-
ղաց, բարձեր զպարտիս Ադամայ յաստուածագործ մար-
մինդ քո, զոր ի մերմէ բնութենէս ընկալար, և զամե-
նայն կատարեցեր ըստ օրինացն, փրկելով զմեզ յանիծից
օրինացն։ Եկիր ի վերնատունն՝ կատարելով և զայն եօ-
թնախառիր սուրբ օրէնսդրութիւն։ Եւ որ ապատա-
ւորեալ պաշտիս յաննիւթական հրեղինացն, ըստ որում
կրկնի քեզ ամենայն ծունր երկնաւորաց և երկրաւորաց
և սանդարամետականաց, այսօր անօրինական մարդասի-
րութեամբ խոնարհեցար ի ծունկս քոյոց սրբոց առաքե-
լոցն. լուացեր զոտս հողեղէնս, զբարուրս և զգեղեցիկ
կարգս աւանդելով մեզ։

Եւ արդ Տէր բարերար և բազումողորմ, որպէս և
յայնժամ ազդ արարեալ՝ դաստիարակեցեր զմեզ՝ կեր-
պարանակից լինել փրկագործ խոնարհութեան քո, շնոր-
հեա և այժմ մեղաւոր ծառայիցս քոց, որք յերեսս ան-
կեալ աղաչեմք զգութ մարդասէր շնորհաց քոց, զքա-

ւութիւն մեղաց. որպէս զի փոքր ջրովս այսուիկ՝ յորս լուանամք զոտս միմեանց և տկար անձամբք մերովք՝ զկենդանարար աւանդութիւնս կատարեմք, հեղցես ի մեզ զամէնառատ և զամենազօր շնորհս քո, և մաքրեսցես զմեզ յամենայն աղտեղութեանց և ի շաղախմանց մեղաց մերոց: Հեռացո ի մէնջ զամենայն հպարտութիւն և զամբարտաւանութիւն, զոր էած բանսարկուն ի վերայ տկար բնութեանս մերում պատրանօք իւրովք: Արժանաւորեա զմեզ՝ մտաց աչօք լուսաւոր ճառագայթիւք նայել ի կենսաբեր իջումն շնորհաց քոց: Զգեցո մեզ Տէր զճշմարիտ խոնարհութիւն և զհեզութիւն և զքաղցրութիւն և զսէր քո՝ որ է լրումն օրինաց քոց, զոր կատարեցեր՝ և ուսուցեր մաքրափայլ աշակերտաց քոց. որպէս զի և մեք կատարելով զյիշատակ փրկաւէտ չարչարանաց քոց, ընդ դասս սրբոց առաքելոցն արժանի լիցուք տօնել զլուսափայլ յարութիւն քո, և ընդ նոսին խոստովանելով զքեզ Քրիստոս Աստուած մեր, փառաւորեսցուք զՀայր և զՈրդի և զսուրբ Հոգին այժմ և:

Խաղաղութիւն ամենեցուն:

Դարձեալ երկիր պագանեմք, և փառաւորեմք զքեզ Քրիստոս Աստուած մեր, որ եսդ էակից Հօր՝ և համագոյակից սուրբ Հոգւոյն, որ միշտ փառաւորեալ օրհնիս անդադար սրբասաց ձայնիւ ի հոգեղէն և ի հրեղէն դասարթնոցն. անպատմելի և հրաշազարդ գեղապարութեամբ համեցար և ի հողեղինացս ընդունել զօրհնաբանութիւն, որք ի քոյոց սրբոց առաքելոցն ընկալեալք զաւանդութիւն, և ըստ կարի մերում զվերնոցն բերելով զնմանութիւն, պար առեալ կամք առաջի քոյոյ տէրութեանդ՝ համարձ զգալի անուշահոտութեամբ: Ընկալ Տէր և զխունկս զայս ի մէնջ ի մեղաւորացս, զոր մատուցանեմք քեզ ի ժամուս յայսմիկ, որ է յիշատակ խոնարհութեանն քո՝ զոր վասն մեր կատարեցեր. և լցո զմեզ յանուշահոտութեանց մարմնատիպ աստուածութեանն քո՝ զոր վասն մեր զգեցար. և ի ձեռն լուացմանս այսորիկ նիւթականի լուա և մաքրեա զաննիւթ ոգիս մեր ի թոյնից մահաբեր վիշապին. և արժանաւորեա զմեզ՝ մաքուր տաճար և օթևան լինել սրբոյ Երրորդութեանդ, այժմ և միշտ և յանսպառ յաւիտեանս յաւիտենից. ամէն:

Եւ յետ այսորիկ կատարիչ քահանայն առեալ ջուր՝ արկանէ ի կոնքն խաչանման: Եւ այս կանոն կատարի:

## Առւն ձայնի ՍԱՂՄՈՍ ԻԸ

Կց․ Ձայն Տեառն ի վերայ ջուրց՝ և Աստուած փառաց որոտաց․ և Տէր ինքն ի վերայ ջուրց բազմաց։
Փխ․ Մատուցէք Տեառն որդիք Աստուծոյ ։ 399 ։

### ԸՆԹԵՐՑՈՒԱԾՍ ԵԼԻՑ։ Լ․ 17։

Խօսեցաւ Տէր ընդ Մովսէսի և ասէ․ արա աւազան պղնձի, և զխարիսխ նորա պղնձի, առ ի լուանալոյ ի նմա․ և դիցես զնա ընդ խորանն վկայութեան և ընդ սեղանն․ և արկցես ի նա ջուր։ Եւ լուասցեն Ահարոն և որդիք նորա ի նմանէ զձեռս և զոտս իւրեանց։ Յորժամ մտանիցեն ի խորանն վկայութեան՝ լուասցեն ջրով և մի՛ մեռանիցին․ կամ յորժամ մերձենայցեն ի սեղանն պաշտել, և հանել զողջակէզսն Տեառն, լուասցեն զձեռս և զոտս իւրեանց, զի մի՛ մեռանիցին։ Եւ եղիցի նոցա օրէն յաւիտենական, նմա և ազգաց նորա յետ նորա․ 21։

### ԸՆԹԵՐՑՈՒԱԾՍ ԵՐՐՈՐԴ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԵԱՆՑ։ Է․ 38։

Եւ արար Քիրամ տասն պատուանդանս պղնձիս․ և ունէր պատուանդան մի քառասուն սափոր․ ի չորից կանգնոց պատուանդան մի չափով, և պատուանդան մի ի վերայ միոյ մեքենովթայ՝ տասանեցունց մեքենովթացն։ Եւ եդ զմեքենովթսն հինգ յուսոյ տանն յաջմէ, և զհինգն յուսոյ տանն ի ձախմէ․ և ծովն յուսոյ տանն ընդ աջմէ՝ ընդ արևելս ի հարաւոյ կողմանէ։ Եւ արար Քիրամ զսանսն և զբեռուցիչսն և զտաշտսն․ և կատարեաց Քիրամ առնել զամենայն գործն զոր արար արքայի Սողոմոնի ի տան Տեառն։ 40։

### ԸՆԹԵՐՑՈՒԱԾՍ ԵՐԿՐՈՐԴ ՄՆԱՑՈՐԴԱՑ։ Դ․ 2։

Եւ արար Սողոմոն զծովն հալածոյ ի տասն կանգնոյ զչափն, բոլորակ շուրջանակի, և ի հինգ կանգնոյ զբարձրութիւն, և շուրջանակի յերեսուն կանգնոյ։ Եւ նմանութիւն եզանց ի ներքոյ նորա, որք շուրջ կային, ի տասն կանգնոյ շուրջ պատեալք զնովաւ․ և ձուլեցին զզուարակսն ըստ ձուլածոյն իւրեանց, որպէս արարին զնոսա երկոտասան զուարակս․ երեքն հայէին ի հիւսիսի, և երեքն հայէին յարևմուտս, և երեքն հայէին ի հարաւ,

Digitized by Google

և երեքն հայէին յարևելս. և ծովն ի վերայ նոցա, և յետոյքն իւրեանց ի ներքոյ։ Եւ թանձրութիւն ծովուն թզաւ և շուրթն նորա իբրև զշուրթն բաժակի, քանդակեալ բոյս շուշանի, և տանէր երիս հազարս չափ. և կատարեաց զնա։ Եւ արար աւազանս տասն, և եդ զհինգըն յաջմէ, և զհինգն ի ձախմէ լուանալ ի նոսա զգործ ողջակիզացն և ողողել ի նոսա. և ծովն՝ առ ի լուանալ ի նմա քահանայիցն զինքեանս։ 6։

ԸՆԹԵՐՑՈՒԱԾՍ ԵՍԱՅԵԱՅ ՄԱՐԳԱՐԷԻ: ԽԴ. 2:

Մի՛ երկնչիր ծառայ իմ Յակոբ և սիրեցեալդ իմ Իսրայէլ, զոր ընտրեցի. զի ես տաց ջուր ի ծարաւ՝ որոց գնան յանջրդւոջ. եդից զոգի իմ ի վերայ զաւակի քո՝ և զօրհնութիւնս իմ ի վերայ որդւոց քոց։ Եւ զուարճասցին իբրև զխոտ ջրարբի, և որպէս զուռ ի մէջ ջրոց գնացից։ Մին ասասցէ՝ Աստուծոյ եմ ես, և միւսն խրախոյս բարձցէ յանուն Աստուծոյ Յակոբայ, և միւսն գիր հանցէ ձեռամբ իւրով՝ թէ Աստուծոյ եմ ես, և յանուն Իսրայէլի խրախոյս բարձցէ։ Այսպէս ասէ Աստուած թագաւորն Իսրայէլի, և որ փրկեաց զնա Աստուած զօրութեանց։ 6։

ՊԵՏՐՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅՆ Ի ԿԱԹՈՒՂԻԿԵԱՅՑ ԱՌԱՋԻՆ ԹՂԹՈՅՆ
Է ԸՆԹԵՐՑՈՒԱԾՍ: Գ. 17:

Զի լաւ է բարեգործաց, եթէ կամիցին ըստ Աստուծոյ կամացն չարչարել՝ քան չարագործացն. զի և Քրիստոս միանգամ վասն մեղաց ի վերայ մեր մեռաւ, արդարն ի վերայ անարդարոց, զի զմեզ մերձեցուսցէ առ Աստուած. զի թէպէտ և մեռաւ մարմնով, այլ կենդանի է Հոգւով։ Որով և ոգւոցն որ էին ի բանտին, երթեալ քարոզեաց, երբեմն ապստամբելոցն, յորժամ ներէր նոցա Աստուծոյ երկայնմտութիւնն յաւուրս Նոյի յորս տապանն կազմէր. յորս նուազունքն, այս ինքն ոգիք իբրև ութ ապրեցան ի ջրոյն։ Որ և զձեզ ըստ նմին օրինակի կեցուսցէ մկըրտութիւնն. ոչ զմարմնոյ աղտն ի բաց ընկենլով, այլ զբարւոք մտաց հանդէս առ Աստուած, ի ձեռն յարութեանն Յիսուսի Քրիստոսի. որ է ընդ աջմէ Աստուծոյ երթեալ յերկինս, ի հնազանդել նմա հրեշտակաց և իշխանութեանց և զօրութեանց։ 22։

Digitized by Google

ՊՕՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՑՆ Ի ԿՈՐՆԹԱՑԻՈՑ ԱՌԱՋԻՆ ԹՂԹՈՅՆ Է ԸՆԹԵՐՑՈՒԱԾՍ: Ժ. 1:

Ոչ կամիմ եթէ տգէտ իցէք եղբարք, զի հարքն մեր ամենեքին ընդ ամպովն էին, և ամենեքին ընդ ծովն անցին, և ամենեքեան ի Մովսէս մկրտեցան յամպն և ի ծովն, և ամենեքին զնոյն զհոգևոր զկերակուրն կերան, և ամենեքին զնոյն զհոգևոր ըմպելին արբին. զի ըմպէին ի հոգևոր վիմէն որ երթայր զհետ Նոցա, և վէմն էր ինքն Քրիստոս ։ 4 ։

ՅՈՎՀԱՆՆՈՒ ԱՌԱՔԵԼՈՑՆ Ի ԿԱԹՈՒՂԻԿԵԱՅՑ ԱՌԱՋԻՆ ԹՂԹՈՅՆ Է ԸՆԹԵՐՑՈՒԱԾՍ: Դ. 7:

Սիրելիք, սիրեսցուք զմիմեանս, զի սէր յԱստուծոյ է. և ամենայն որ սիրէ՝ յԱստուծոյ է ծնեալ, և ճանաչէ զԱստուած. և որ ոչն սիրէ՝ ոչ ճանաչէ զԱստուած, զի Աստուած սէր է ։ Եւ զի յայտ երևեցաւ սէրն Աստուծոյ ի մեզ, զի զՈրդին իւր միածին առաքեաց Աստուած յաշխարհ, զի եղիցուք Նովաւ կենդանիք ։ Յայսմ է սէրն, ոչ զի մեք սիրեցաք զԱստուած, այլ զի Նա սիրեաց զմեզ. և առաքեաց զՈրդին իւր ի քաւութիւն մեղաց մերոց ։ Սիրելիք, եթէ Աստուած այսպէս սիրեաց զմեզ, ապա և մեք պարտիմք զմիմեանս սիրել ։ ԶԱստուած ուրուք երբեք չէ տեսեալ. եթէ սիրեսցուք զմիմեանս՝ Աստուած ի մեզ բնակէ, և սէր Նորա ի մեզ կատարեալ է. այսուիկ գիտեմք եթէ մեք ի Նա բնակեալ եմք և Նա ի մեզ, զի ի Հոգւոյն իւրմէ ետ մեզ ։ Եւ մեք տեսաք և վկայեմք, զի Հայր առաքեաց զՈրդին իւր փրկիչ աշխարհի ։ Որ ոք խոստովանեսցի՝ եթէ Յիսուս է որդի Աստուծոյ, Աստուած ի Նմա բնակէ՝ և Նա յԱստուած. և մեք հաւատացաք, և ծանեաք զսէրն Աստուծոյ՝ զոր ունի առ մեզ ։ Աստուած սէր է, և որ կայ ի սէրն՝ բնակեալ է յԱստուած, և Աստուած ի Նմա բնակէ ։ Յայսմիկ է կատարեալ սէրն Նորա ընդ մեզ, զի համարձակութիւն ունիմք յաւուրն դատաստանի. զի որպէս և Նայն է, Նոյնպէս և մեք եմք յաշխարհի յայսմիկ ։ Երկիւղ ոչ գոյ ի սէր, այլ սէրն կատարեալ ի բաց մերժէ զերկիւղն. զի երկիւղ ընդ տանջանաց է. իսկ որ երկնչին, չէ կատարեալ ի սէրն ։ Մեք սիրեսցուք զԱստուած, վասն զի Նա նախ սիրեաց զմեզ ։ Եթէ ոք ասիցէ՝ եթէ սիրեմ զԱս-

Digitized by Google

տուած, և զեղբայր իւր ատիցէ, սուտ է. որ ոչ սիրէ զեղբայր իւր զոր տեսանէ, զԱստուած զոր ոչն ետես՛ զիա՞րդ կարիցէ սիրել. և զայս պատուէր ունիմք առ ի Նմանէ, զի որ սիրէ զԱստուած՝ սիրէ նա և զեղբայր իւր։ 21։

Խրատ ասացեալ վասն սիրոյ։

Աստուած սէր է, ասէ որդին Որոտման՝ սիրելի աշակերտն Քրիստոսի Յովհաննէս. և որ կայ ի սէրն՝ յԱստուած բնակի, և Աստուած ի Նմա։ Եւ արդ եղբարք, լուարուք և ի միտ առէք զճառ սիրոյ։ Զի ամենայն որ սիրէ զԱստուած՝ սիրէ նա և զեղբայր իւր։ Զի սէրն Աստուծոյ՝ սիրով եղբօրն երևի։ Զի թէ զեղբայրն՝ զոր տեսանէ՝ ոչ սիրէ, զԱստուած՝ զոր ոչն տեսանէ, զիա՞րդ կարիցէ սիրել։ Այսուիկ ճանաչեմք՝ եթէ սիրեմք զԱստուած՝ յորժամ սիրեմք զեղբայրն մեր ըստ հոգւոյն սիրոյ և ոչ ըստ մարմնոյ. զի այլ է սէր հոգւոյն, և այլ մարմնոյն. զոր յառաջ գնացեալ ասասցուք յիւրում տեղւոջն։ Բայց արդ՝ ամենայն որ սիրէ՝ ճանաչի յԱստուծոյ. և ինքն ճանաչէ զԱստուած. և ամենայն որ ոչ սիրէ զեղբայր իւր յաւակցաբար՝ օտար է յԱստուծոյ, և զշնորհս աստուածային ոչ կարէ ընդունել։ Ամենայն որ սիրէ զեղբայր իւր ի սուրբ սրտէ՝ բնակարան լինի Աստուծոյ, և Աստուած ի Նա բնակէ։ Զի ինքն Տէրն սիրեաց զմեզ, և առաքեաց զՀոգին ճշմարտութեան՝ բնակել ի մեզ։ Զի իմանալի հոգիս մեր՝ ընդ անիմանալի Հոգւոյն Աստուծոյ սիրով կապակցի։ Եւ որպէս Նա սիրեաց զմեզ, նոյնպէս և ի մէնջ կամի զսէր առ միմեանս։ Տես թէ որչափ համարձակութիւն ունի սէրն առ Աստուած. որպէս թէ նման Աստուծոյ առնէ զմարդն. զի Աստուած սիրովն իւրով նման մարդկան եղև։ Եւ եցոյց՝ թէ մարդիկ իւրեանց սիրովն նման Աստուծոյ լինելոց են։ Զի Աստուած այնչափ սիրեաց զաշխարհս՝ մինչև զՈրդին իւր միածին առաքեաց ի փրկութիւն աշխարհի։ Եւ թէ մեք սիրեսցուք զմիմեանս, որպէս և Աստուած սիրեաց զմեզ, ոչ ինչ է չար՝ որ խափանէ զսէրն մեր. ամենայն որ սիրէ՝ յայտնի է առաջի մարդկան, և համարձակ առաջի Աստուծոյ։ Զի զերկիւղ ի մեղաց մահու ոչ ունի. այլ սիրովն Աստուծոյ զինեալ կայ, և անահ յամենայն երկիւղական վտանկից։

Digitized by Google

Ուր սէր է՝ անդ երկիւղ ոչ է, որպէս Յովհաննէս ասէ. երկիւղ ոչ գոյ ի սէրն, այլ սէր կատարեալ ի բաց մերժէ զերկիւղ. զի երկիւղ ընդ տանջանաւք է. և սէր ի համարձակութիւն. և զի երկիւղ հալածի ի սիրոյ. և ուր սէր ոչ է, անդ է երկիւղ դատաստանին, և ահ կորըստեան աւուր մեծի ահեղ ատենին: Իսկ սէրն աներկիւղ առնէ զմարդն յամենայն տանջանաց. սէր զայն ասեմ, որ ամենևին հեռի է յերկրայութենէ. զի երկրայութիւն և սէր ի միասին ոչ բնակին: Եւ գիտելի է, զի սէրն ոչ միայն ի կեանս յաւիտենականս պտղաբերէ զպտուղ խաղաղութեան իւրոյ, այլ և յաշխարհիս յայսմիկ զամենայն թըշնամութիւն ի բաց հալածէ. զնախանձ և զատելութիւն, զոխակալութիւն և զչարակնութիւն, զչարախօսութիւն և զհայհոյութիւն, զորտունջ և զբամբասանս, զհպարտութիւն և զամբարհաւաճութիւն: Եւ մանաւանդ՝ զմայր ամենայն չարեաց զարծաթսիրութիւն, և զագահութիւն: Արդ՝ որ սէր ունի, յայս ամենայն չարեացս ի բաց հեռանայ, և յերկնային անքոյթ խաղաղական հանգիստն ժամանէ յամենևին բարին: Զի՞նչ խաղաղական քան զսէրն. ազատ լինել յամենայն խռովութենէ, և զաստուածային հաճոյսն կատարել: Սէրն բանալի է արքայութեան՝ երկնից, և ճանապարհ կենացն յաւիտենից: Սէրն զմարդիկ որդիս Աստուծոյ առնէ, և երկնից արքայութեանն ժառանգորդ: Սէրն զապականացու բնութիւնս անապական գործէ, և զմահկանացուս յանմահութիւն վերափոխէ: Սէրն զերկրայինսն երկնայինս առնէ. և զհողեղէնսն հրեղէն կազմէ: Եւ արդ՝ ո՞վ կարէ պատմել զանչափ մեծութիւն սիրոյն. զի անճառ և անպատում է. ըստ որում և անեղ բնութիւն աստուածութեան անքննելի է, այսպէս և բնութիւն սիրոյն: Եւ որպէս Աստուած անբաւ է, բայց յամենեսեան մերձ է և բնակեալ է ի հեզս և ի խոնարհս, և յայնոսիկ որք դողան ի բանից նորա, այսպէս և սէրն յամենեսին մերձ է՝ որ կամին զնա, և ինքն եկեալ բնակեսցէ ի խնդրողս իւր. քանզի սէրն սիրէ զսիրելիս իւր, և ատէ ոչ՝ զատելիս իւր: Որք խնդրեն զնա՝ մերձ է ի նոսա աստուածապէս. զի Աստուած սէր է, և կամեցող սիրոյ՝ ի սուրբ սրտէ, և յանկեղծաւոր հաւատոցն:

Ձայնէ Ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա:

Digitized by Google

Տէր հովուեսցէ զիս, և ինձ ինչ ոչ պակասեսցէ ։

Կամ

Պատրաստ արարեր առաջի իմ զսեղան, ակն յանդիման նեղչաց իմոց · Օծեր իւղով զգլուխ իմ, բաժակ քո որպէս անապակ արբեցոյց զիս ։

Ջնէ Որթի ։

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Յովհաննու ։ ԺԳ. 1. ։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Յառաջագոյն քան զտօնն զատկի գիտաց (Յիսուս) թէ հասեալ է ժամ Նորա զի փոխեսցի յաշխարհէս աստի առ Հայր, սիրեաց զիւրսն՝ որ յաշխարհի աստ են, ի սպառ սիրեաց զնոսա ։ Եւ ի լինել ընթրեացն՝ սատանայի իսկ արկեալ էր ի սիրտ՝ զի մատնեսցէ զնա՝ Յուդայ Սիմովնի Իսկարիովտացւոյ ։ Գիտաց Յիսուս՝ զի զամենայն ինչ ետ Հայր ի ձեռս Նորա, և թէ յԱստուծոյ ել՝ և առ Աստուած երթայ. յառնէ յընթրեաց անտի և դնէ զհանդերձն, և առեալ զենջակ մի՝ սփածաւ. և ապա առեալ ջուր՝ արկ ի կոնք, և սկսաւ լուանալ զոտս աշակերտացն, և սրբէր զենջականն զոր սփածեալ էր ։ Գայ առ Սիմովն Պետրոս. և նա ասէ ցնա. Տէր, դո՞ւ զիմ զոտս լուանաս ։ Պատասխանի ետ Նմա Յիսուս և ասէ. զոր ինչ ես գործեմ, դու այժմ ոչ գիտես, բայց ապա գիտասջիր ։ Ասէ ցնա Պետրոս. ոչ լուասցես զոտս իմ յաւիտեան. պատասխանի ետ Յիսուս. եթէ ոչ լուացից զքեզ, ոչ ունիս ընդ իս մասն ։ Ասէ ցնա Սիմովն Պետրոս. Տէր, մի՛ միայն զոտս իմ, այլ և զձեռս և զգլուխ ։ Ասէ ցնա Յիսուս. լուացելոյն չէ ինչ պիտոյ, բայց զի զոտսն լուանայցէ. քանզի ամենևին սուրբ է. և դուք սուրբ էք, այլ ոչ ամենեքեան ։ Զի գիտէր զայն որ մատնելոյն էր զնա, վասն այնորիկ ասաց՝ թէ ոչ ամենեքեան սուրբ էք ։ 11 ։

Ջնէ [illegible] ։

Աստուած մեծ և սքանչելագործ գործութիւն. անեղանելի բնութիւն. որ ողորմութեամբ հաճեցար առնել զարարածս ամենայն յոչընչէ աղաչեմք ։

Լուր Տէր և ողորմեա ։

Զգեցեր զվերնայարկս երկնից որպէս խորան ի վե-

րայ ջուրց. մածեալ հաստատութեամբ ի բնակութիւն անպարագրելի աստուածութեանն քո. եւ զամենայն հրաշակերտս ի գովեստ անուանն քում օրհնողիդ աղաչեմք:

Արարեր քեզ սրբասացս զսերովբէսն եւ զքերովբէսն. զհողեղէնս եւ զհրեղէն անմարմնական բնութիւնս. ընդ նոսին եւ ի հողեղինաց հանեցեր ընդունել փառաբանիչս եւ երկրպագուս ամենազօր տէրութեանդ քո աղաչեմք:

Եղեր մարդ ճշմարիտ անճառելի ծագմամբ եւ ճառագայթ անհասանելի անիմանալի էութեան հօր. եւ եկիր ի փրկութիւն մեզ մարդասէր աղաչեմք:

Եղեր լրումն օրինաց եւ մարգարէից. եւ եկեր կամաւ ի վերնատունն խորհրդոյ. լուացեր զոտս աշակերտաց քոց անճառելի խոնարհութեամբդ քո աղաչեմք:

Ընկալ Տէր եւ այժմ զլուացումս զոր աւանդեցեր մեզ ի մեղաց թողութիւն. բարեխօսութեամբ սրբուհւոյ մօր քո եւ միշտ կուսին Մարիամու Աստուածածնին. աղաչանօք երջանիկ եւ նախընթաց կարապետին քո եւ Մկրտչին Յովհաննու. ճշմարտական հանդիսիւ հեղման արեան սրբոյն Ստեփաննոսի նախասարկաւագին քո եւ առաջին վկային. մաղթանօք ընտրելոց քոց առաքելոց եւ ամենայն մաքրելոց անձանց մարտիրոսաց պսակելոց ի քէն աղաչեմք:

Յիշեա Տէր եւ ողորմեա.

Եւ եւս առաւել զյորդորումն սիրոյ. եւ զգործս բարեաց պարգեւել մեզ խնդրեմք:

Տուր մեզ Տէր Աստուած մեր:

Զանձինս մեր եւ զմիմեանս Տեառն Աստուծոյ ամենակալին յանձն արասցուք:

Digitized by Google

Քեզ ցեաանդ յանձն եղիցուք ։

Ո՛ղորմեա՛ մեզ Տէր Աստուա՛ծ մեր ըստ մեծի ողորմութեան քում. ասասցուք ամենեքեան միաբանութեամբ ։

Տէր ողորմեա՛, Տէ՛ր ողորմեա՛, լո՛ւր Տէ՛ր եւ ողո՛րմեա ։

Եւ ասեն շարական ոտնալուային . Զահեղ զանքնին ։

Եւ զերգ ոտնալուային զասացեալն ի յԱւետեաց վարդապետէ .
Աստուածն ամենի ։

Եւ եպիսկոպոսն կամ քահանայն ասէ զաղօթս ի վերայ Ջրոյն .

Տէր մեր Յիսուս Քրիստոս Աստուած ամենաստեղծ, Հզօր և փառաւորեալ . անհասանելի, անիմանալի, վերացեալ բարձրացեալ քան զամենայն փառս . որ նստիս ի քրովբէական կառս և մի ի սրբոյ Երրորդութենէդ դաւանիս ի վերնական սրբասաց սերովբէից . վասն որոյ և զերեքսրբեան փառաբանութիւն ընդ Հօր և սուրբ Հոգւոյն՝ հրեղէն բերանօքն իւրեանց սոսկալի ձայնիւ սարսափելով առաջի փառաց աթոռոյ աստուածութեանդ քո մատուցանէին քեզ, լի ասելով զամենայն երկիր փառօք քո ։ Դու Տէր յաղթեալ ի մարդասիրութենէդ քումմէ ոչ կարացեր անտես առնել զարարածս քո զ՚ի հողոյ ստեղծեալքս . այլ հաճեցար և ի մերմէ բնութենէս փառաւորիլ, խառնելով զհողեղէն ստորև կացեալքս ընդ վերնական հոգեղէն և հրեղէն աննիւթական բնութիւնսն ։ Եկիր յաշխարհս կամաւ Հօր և սուրբ Հոգւոյն . առեր զկերպարանս ծառայի ի սուրբ և յանշաղախ կուսէն Մարիամայ . և ճշմարիտ Բանդ Հօր մարմին եղեալ՝ անեղծ և անապական նոր և անճառելի խառնմամբ, և կատարելով զամենայն ստուերական օրէնսն, իղեր լրումն օրինաց և մարգարէից . ճշմարիտ օրէնսդիր Աստուած իմ Յիսուս Քրիստոս ։ Եւ ի լրման ամենայնի՝ եկիր ի վերնատունն խորհրդոյ, կատարեցեր և զայն ևս մովսիսադիր ստուեր զատկազէն նորոյ փրկագործութեանս խորհուրդ, որ նախ յԵգիպտոս նկարեցաւ ։ Եւ դու ինքնին քահանայապետ սուրբ՝ կատարիչ խորհրդոյ, և գառն Աստուծոյ՝ որ մըրտընջենաւոր բառնաս զմեղս աշխարհի, միանգամ պատարագաւն հատեր զմարմինդ սիրով . բաշխելով քոյոց

ընտրեալ աշակերտացն. և հրամայեցեր նոցա զկամաւոր չարչարանս քո որ վասն մեր և զմահդ պատմել մինչև ի միւսանգամ քո յերկրորդ և ի փառաւոր գալուստն։ Բայց նախ քան զայսոսիկ անճառելի խոնարհութեամբ ի բաց եդեալ զհանդերձս, զգեցար ղենջակ, որ զգեցեալ զլոյս որպէս զօթոց. և տնօրինական ներմարդութեամբ խոնարհեցար ի ծունկս աշակերտացն՝ առ ի լուանալ զոտս հողեղէնս. որում կրկնի ծունր երկնաւորաց և երկրաւորաց և սանդարամետականաց. և զխորհուրդ սրբոյ աւազանին մասնաւորապէս նկարելով զոտս միայն լուանալով ծանուցեր, իսկ զկատարեալ խոնարհութիւնդ յայտնապէս ուսուցեր և աւանդեցեր ասելով՝ Թէ օրինակ մի ետու ձեզ՝ զի որպէս ես ձեզ արարի և զուք միմեանց առնիջիք ։

Եւ արդ Տէր բարերար, մեք ծառայքս քո և խաշն արօտի քո՝ ժողովեալք ի գաւիթ սրբոյ եկեղեցւոյ քո ըստ աստուածային օրէնսդրութեանդ, զոր աւանդեցեր մեզ ի ձեռն սուրբ առաքելոցն, աղաչեմք զքեզ առաքեա զէակից քո և զփառակից ծնողի քո՝ զՀոգիդ սուրբ յարքունական աթոռոյդ, որ եկեալ հանգչիցի ի ժողովարանս մեր. և սրբեսցէ զջուրս զայս, որպէս զի եղիցի սա ի քաւութիւն մեղաց մերոց, և յընթացս ամենայն բարեաց ճանապարհաց. վասն զի սովաւ զօրացուցեալ զգարշապարս մեր անխափան ընթասցուք խաչազգեստեալք ի յաւիտենական ճանապարհս պատուիրանաց քոց. և արժանի լիցուք հասանել ի մասն ժառանգութեան սրբոցն ի լոյս. և գոհանալով փառաւորեսցուք զՀայր և զՈրդի և զսուրբ Հոգին այժմ և միշտ և յաւիտեանս ։

Խաղաղութիւն ամենեցուն ։

Դարձեալ երկիր պագանեմք, և աղաչեմք զամենազօր ողորմութիւնդ քո, քաւեա զաղտ և զանօրէնութիւն ոգւոց մերոց ի ձեռն ջրոյս այսորիկ. որպէս և յաւուրսն Նոյի զանօրէնութիւն ամենայն երկրի՝ ջրովն հեղեղաւ. և որպէս զբորոտութիւն Նեեմանայ ասորւոյ՝ ի ձեռն Յորդանանու, և որպէս զզանազան ախտսն՝ ի ձեռն յուզման ջուրցն Սելովամայ, և որպէս զմեղս ամենայն աշխարհի ի ձեռն աւազանին վերստին ծննդեան ։ Եւ որպէս յայնժամ հաստատելով զճշմարիտ մարդեղութիւնդ քո՝ տնօրինաբար խոնարհեցար, և լուացեր զոտս երանելի առաքելոց քոց,

Digitized by Google

զօրացուցանելով զգարշապարս Նոցա յընթացս աւետարանի քո ընդ ամենայն տիեզերս, այլ և կոխել զզօրութիւն թշնամւոյն աներկիւղ համարձակութեամբ, այսպէս ի մեզ հրաշագործեա մարդասէր Տէր՝ ի ձեռն աներեւոյթ գալստեան քո ի ժողովարանս մեր. որպէս զի և մեք զօրացեալք ի շնորհաց քոց՝ անխափան ընթասցուք ի շաւիղս պատուիրանաց քոց. որով և փրկութեան արժանաւորեսցուք հասանել ընդ ամենայն սուրբս քո. և գոհանալով փառաւորեսցուք զՀայր և զՈրդի և զսուրբ Հոգին, այժմ և միշտ և։

Եւ յաղթող օրհնէ զջրահեղքն խաչիւ և աւետարանաւ շնորհն երիցս անգամ՝ ասելով.

Օրհնեսցի և սրբեսցի ջուրս այս նշանաւ սուրբ խաչիս և սուրբ աւետարանիս և աւուրբս շնորհիւ. յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից։

Եւ ժողովուրդն միաբան ասեն.

Ամէն ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա։

Ասա Քարոզ. Սուրբ խաչիւ։ Աղօթք. Պահպանեա։

Եւ ապա այնուհետև շնորհաբաշխ քահանայն կամ վարդապետն, և երկուս ի ընտրեալ երիցանց և ի պաշտօնէից մերոց։ Եւ առնել զջուրն, և նստել լուացեն կարգաւ զոտս ամենեցուն ի մեծամեծաց մինչև ցփոքունս, և սրբեսցեն զջուրն զոր օրհնեալ են։

Եւ այլն զոր առնել յայսկոյս և յայնկոյս անաշխատ խնկով և մոմեղինօք լուցելով, երգեն դպիրք յայնժամ Շարական ԳՉ. Վերաձգողն երկնից։ 388։ Ջամբն շարականին ի լման ասեն։ ԵւզԱյսօր անճառն։ 164։ Ամ և զՆորոգողն։ ։ 481։ և այլ ապա և կամին զնորհնդրական շարականն, մինչև վճարի ոտից լուացման։

Եւ լուացեալն կարգ ըստ կարգի երկրպագեն սուրբ խաչին. և համբուրեն զաւետարանն, և զաջ եպիսկոպոսին կամ քահանային լուացողին։

Եւ յորժամ ամենայնն կատարեսցի ասացէ՝ երգն և լուացումն, նստի եպիսկոպոսն միաբանութեամբ յաթոռ, և ասեն. Որթի, և շնորհ, ցայդ աւետարանն կարդան։

Սրբոյ Աւետարանին որ ըստ Յովհաննու: ԺԳ. 12:

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ յորժամ լուաց զոտս նոցա, առ զհանդերձս իւր և դարձեալ բազմեցաւ, և ասէ ցնոսա. գիտէ՞ք զինչ արարի ձեզ: Դուք կոչէք զիս վարդապետ և Տէր. և բարւոք ասէք, քանզի եմ իսկ: Իսկ արդ՝ եթէ ես լուացի զոտս ձեր՝ տէրս և վարդապետս, և դուք պարտիք զմիմեանց ոտս լուանալ: Զի օրինակ մի ետու ձեզ, զի որպէս ես ձեզ արարի, և դուք առնիջիք: 15:

Ապա սարկաւագն քարոզէ.

Եւ ևս միաբան ամենեքեան գոհացարուք զանհասանելի և զանճառելի մարդասիրութենէն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որ այսօր նորոգեաց ի մեզ զաւանդման պատուիրանի իւրոյ, տալով մեզ առհաւատչեայ զարգեաց թողութեան մեղաց՝ սրբոյ աւազանին մաքրութեանն: Աղաչեսցուք և խնդրեսցուք ի նմանէ, զի արժանաւորեսցէ զմեզ արթնութեամբ և զգաստութեամբ՝ հաղորդ լինել չարչարանաց նորա, առ ի հանդիպումն լուսոյ փառաւոր յարութեան իւրոյ: Ամենակալ Տէր Աստուած մեր կեցուսցէ և ողորմեսցի:

Եւ ժողովուրդն ասէ.

Տէր ողորմեա. Տէր ողորմեա. Տէր ողորմեա:

Եւ եպիսկոպոսն կամ քահանայն ասէ զաղօթս.

Տէր Աստուած մեր, որ ըստ բազում աքանչելագործ մարդասիրութեան քո ոչ անարժան համարեցար լուանալ զոտս աշակերտաց քոց. զի խոնարհութեամբ ուսուցես բարձրանալ այնոցիկ՝ որք զան զհետ հրամանաց քոց Տէր. դու նոյն ինքն փրկիչ աշխարհի՝ և այժմ նորոգեա ի մեզ զաւանդման պատուիրանի քո, և երևելի ջրովս այսորիկ լուացմամբ շնորհեա մեզ զսրբութիւն Հոգւոյդ սրբոյ. պարսպեա զմեզ ի հոգի և ի մարմին՝ յամենայն սատանայական ներգործութեանց. զի դու ես Թագաւոր մեր, և անուն քո կոչեցեալ է ի վերայ մեր: Վասն որոյ քեզ հանցուք զօրհնութիւն և զփառս Հօր և ամենասուրբ Հոգւոյդ, այժմ և միշտ:

Խաղաղութիւն ամենեցուն:

Հովիւ քաջ, հովիւ բարի և մարդասէր Տէր մեր Յի-

Digitized by Google

սուս Քրիստոս, որ կամաւորաբար յանձն առեր դնել զանձն քո ի վերայ բանաւոր հօտի քո. որ կամաւ Հօր և սուրբ Հոգւոյն եկիր ի խնդիր մոլորեալ ոչխարի քո. որ զմոլորեալքս գտեր, և զվիրաւորեալքս բժշկեցեր Հոգւով և Ջրով սուրբ աւազանին լուացմամբ. անապական մարմնոյ և արեան քո ճաշակմամբ: Վասն որոյ և այսօր տնօրինական Ներմարդութեամբ զերկուս փրկագործութիւնս մեր անճառելի խոնարհութեամբ սկիզբն արարեալ կատարեցեր ի սուրբ վերնատունն՝ լուանալով զոտս աշակերտաց քոց, բաշխելով ի Նոսա զկենդանարար մարմին քո և զարիւն. և զնոյն յիշատակ կամաւոր չարչարանաց քոց Նոքօք աւանդեցեր ամենայն հաւատացելոց քոց՝ կատարել մինչև յերկրորդ գալուստն քո: Եւ արդ Տէր բարերար՝ մեք մեղուցեալ ծառայքս քո ըստ կարի տկարութեան մերում՝ զօրէնս քո յանգ հանեալ՝ աղաչեմք զշնորհս ողորմութեան քո: Հովուեա զբանաւոր հօտս քո յարօտս կենդանարար աւետարանական վարդապետութեան քո: Հանգո զմեզ ի ջուրս աւազանի քո, առ ի յորդեգրութիւն երկնաւոր Հօր քո: Արբո զմեզ ի յուղխս փափկութեան անապական արեան քո՝ զոր վասն մեր հեղեր: Տուր մեզ զկենդանարար մարմինդ քո, որ է հաց կենաց իջեալ յերկնից. և աշխարհի կեանս պարգևէ: Առաջնորդեա մեզ ի շաւիղս պատուիրանաց քոց՝ առաջնորդական Հոգւովդ քով սըրբով: Տուր պահապան երկխուղածաց քոց զբանակս հրեշտակաց քոց, ամրացուցանելով շուրջանակի զհոգի և ըզմարմին մեր ի մեքենայից բանսարկուին. Տուր մեզ իմաստութիւն ճառագայթեալ հոգւով ելանել ընդ քեզ յաղօթս ի սուրբ լեառն Ձիթենեաց, առ ի կցորդութիւն կամաւոր չարչարանաց քոց: Շնորհեա մեզ Տէր զղջումն արտասուաց ընդ երանելոյն Պետրոսի, առ ի լուացումն մեղաց մերոց: Արժանաւորեա զմեզ մաքուր հոգւով հանդիպել քեզ ի փառաւոր և ի միւսանգամ գալստեանդ քո, և ընդ ամենայն սուրբս քո յարագուարճ բերկրանօք ուրախութեամբ օրհնել գովել և փառաւորել զամենասուրբ զԵրրորդութիւնդ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

Ձնյ տող. Հոսեալ հրեղինացն: փոխ. Ընդ երեկոյս հասեալ ժամ: Ձնյ Քար. Խնդրեսցուք: Կեցո. Յայնժ: Ալէլ. Թագաւոր խաղա: Հայր մեր: Եւ արձակմն:

Digitized by Google

# ԿԱՆՈՆ

## ՎԱՍՆ ՏՕՆԻ ՍՐԲՈՅ ԽԱՉԻ

### ՅՈՐԺԱՄ ԿԱՄԻՆ ԽԱՉՎԵՐԱՑ ԱՌՆԵԼ

Յառաջ քան զերեկոյի ժամն դնեն ի սեղանատունն զծածկ սեղանոյ զսուրբ խաչն. որ ունի մասն ի խաչափայտէն յիսուսեան, և զարդարեն ծաղկանօք և վարդենեօք, և ծածկեն պատուական կտաւով: Եւ յետ երեկոյին ժամու ժողովին ի դուռն եկեղեցւոյն. և զգենու եպիսկոպոսն հանդերձ քահանայիւք և սարկաւագօք: Եւ երթեալ բուրվառօք և լապտերօք և քշոցօք՝ առ զխաչն պատրաստեալ են. և ելեալ երկիր պագանեն երեքս և համբուրեն: Եւ երկու յաւագ քահանայիցն առնուն զսուրբ խաչն սեղանոյ բարձրագոյն. և կրելով շուրջանակի սարկաւագացն: Եւ եպիսկոպոսն զհետ գայ, ունելով բուրվառ ի ձեռին. և ասեն

ՇԱՐԱԿԱՆ ԽԱՉԻ ԳՁ

Որ ծագեցեր մեզ լոյս մեծ զնշան յաղթութեան: 1029:

Եւ երթեալ առաջի խորանին և ասէ եպիսկոպոսն.

Տէր Աստուած մեր որ կարգեցեր յերկինս դասս և զինուորութիւնս հրեշտակաց, ընկալ և զզինուորութիւնս եկեղեցւոյ քում սրբոյ:

Եւ դարձեալ մտանեն ի խորանն, և դնեն զսուրբ խաչն ի վերայ սեղանոյն. և խնկեն արկանեն. Եւ ասեն

ՍԱՂՄՈՍ ՂԸ

Կ8. Բարձր արարէք զՏէր Աստուած մեր, երկիր պագէք պատուանդանի ոտից նորա, զի սուրբ է:

Փխ. Տէր թագաւորեաց, բարկացան ժողովուրդք. որ նստիս ի քերովբէս, սասանեցաւ երկիր:

Տէր ի Սիոն մեծ է, և բարձր է ի վերայ ամենայն ժողովրդոց:

Խոստովան եղիցուք անուան քում մեծի, զի ահաւոր և սուրբ է, և պատիւ թագաւորի զիրաւունս սիրէ:

Դու պատրաստեցեր զուղղութիւն, զիրաւունս և զարդարութիւն Յակովբայ դու արարեր:

Բարձր արարէք զՏէր Աստուած մեր, երկիր պագէք պատուանդանի ոտից նորա, զի սուրբ է:

Մովսէս և Ահարոն երիցունք նորա, Սամուէլ ընդ այնոսիկ որ կարդան զանուն նորա:

կարդային առ Տէր և Նա լսէր նոցա, և ի սիւն ամ-
պոյ խօսէր ընդ նոսա։

Պահէին զվկայութիւն Նորա, և զհրամանս զոր ետ նոցա։

Տէր Աստուած մեր դու լսէիր նոցա. Աստուած դու քաւիչ լինէիր, վրէժխնդիր ի վերայ ամենայն գործոց նոցա։

Բարձր արարէք զՏէր Աստուած մեր, երկիր պագէք ի լեառն սուրբ նորա, զի սուրբ է Տէր Աստուած մեր։

ՊՕՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅՆ Ի ԿՈՐՆԹԱՑԻՈՑ ԱՌԱՋԻՆ ԹՂԹՈՑՆ
Է ԸՆԹԵՐՑՈՒԱԾՍ։ Ա 18։

Զի ճառ խաչին կորուսելոցն յիմարութիւն։ 1011։

Զայնէ- Ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա։

Նշանեցաւ առ մեզ լոյս երեսաց քոց, և ետուր ուրախութիւն սրտից մերոց։

## Որթի

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Յովհաննու։ ԺԲ. 28։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս ասէ.

Հայր, փառաւորեա զանուն քո։ Եկն բարբառ յերկնից. և փառաւոր արարի, և դարձեալ փառաւոր արարից։ Եւ ժողովուրդն որ կայր և լսէր, ասէին՝ որոտումն լինել. կէսքն ասէին, հրեշտակ խօսեցաւ ընդ նըմա։ Պատասխանի ետ Յիսուս և ասէ. ոչ վասն իմ ինչ եկն բարբառս այս, այլ վասն ձեր։ Այժմիկ դատաստան է աշխարհիս այսորիկ, այժմիկ իշխան աշխարհիս այսորիկ ընկեսցի արտաքս. և ես յորժամ բարձրացայց յերկրէ, զամենեսին ձգեցից առ իս։ Զայս ասէր, նշանակեալ թէ որով մահու մեռանելոց իցէ։ 33։

Յետ այսորիկ եպիսկոպոսն խնկարկէ. և առնու շրջան ի խորանէն ատենանով, առնելով տահանայտն սկիզբն ի ներքոյ։

Եւ երգեն ի կողմն հարաւոյ ասելով.

ՇԱՐԱԿԱՆ Գկ. Այսօր երեւումն մեծի ճառա։ 1034։

## Որթի

Սրբոյ Աւետարանիս որ ըստ Յովհաննու։ Գ. 13։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս ասէ.

Եւ ոչ ոք ելանէր յերկինս եւ, եթէ ոչ որ էջն յերկնից որդին մարդոյ որ էն յերկինս։ Եւ որպէս Մովսէս բարձրացոյց զօձն յանապատին, նոյնպէս բարձրանալ պարտ է որդւոյ մարդոյ. զի ամենայն որ հաւատայ ի նա՝ ընկալցի զկեանսն յաւիտենականս։ Զի այնպէս սիրեաց Աստուած զաշխարհ, մինչև զՈրդին իւր միածին ետ. զի ամենայն որ



Digitized by Google

հաւատայ ի նա մի կորիցէ, այլ ընկալցի զկեանսն յաւիտենականս ։ Զի ոչ առաքեաց Աստուած զՈրդի իւր յաշխարհ՝ թէ դատեսցի զաշխարհ, այլ զի փրկեսցի աշխարհ նովաւ ։ Որ հաւատայ ի նա՝ ոչ դատապարտեսցի, և որ ոչ հաւատայ ի նա՝ արդէն իսկ դատապարտեալ է, զի ոչ հաւատաց յանուն միածնի Որդւոյն Աստուծոյ։ Եւ այս իսկ է դատաստան. զի լոյս եկն յաշխարհ, և սիրեցին մարդիկ զխաւար առաւել քան զլոյս, զի էին գործք իւրեանց չարութեան ։ Զի ամենայն որ զչար գործէ՝ ատեայ զլոյս, և ոչ գայ առ լոյսն՝ զի մի յանդիմանեսցին գործք նորա. իսկ որ առնէ զճշմարտութիւն գայ առ լոյսն, զի յայտնի լիցին գործք նորա՝ թէ Աստուծով գործեցան ։ 21 ։

Եւ սարկաւագն փոքր քարոզէ և ասէ .

Վասն խաղաղութեան ամենայն աշխարհի, և հաստատութեան սրբոյ եկեղեցւոյ, և ամենայն քրիստոնէից յերևելի և յաներևոյթ վտանգից փրկութեան, քաւութեան և թողութեան, և ամենեցուն հաստատելոյ ի հաւատս, ի յոյս, ի սէր և յամենայն գործս բարեաց, և արժանաւոր լինելոյ արքայութեան երկնից և յաւիտենից կենաց զՏէր աղաչեսցուք ։

Եւ ասեն ի Տէր ողորմեա ։

Եւ եպիսկոպոսն քարոզացուցանէ ասելով զխաչն [illegible]՝ երկիցս յետոյ։ Սարկաւագն յայնէ քարոզ Օրհնեա տէր։ Եւ եպիսկոպոսն գլխանոցքն զխաչն ասելով։ Օրհնեսցի և պահպանեսցի աշխարհս և թագաւորութիւնս, նշանաւ սուրբ խաչիւս և սուրբ Աւետարանաւս փրկելով յերևելի և յաներևոյթ թշնամեաց, յանուն Հօր և Որդւոյ և ։

Այս է հարստ կողմն կարդալ ։ Եւ տանէ զաւարք խաչն ի վերայն. և երկրորդ նոյն օրհնութեամբ յարևելից կողմն, ասելով.

ՇԱՐԱԿԱՆ ԽԱՉԻ ԱՁ. Որ զանարատ բազուկս ։ 1006 ։

## Որթի

Սրբոյ Աւետարանին որ ըստ Մատթէոսի ։ ԻԴ. 27 ։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս ասէ.

Զի որպէս փայլակն՝ որ ելանէ յարևելից ։ 326 ։

Զհնէ քարոզէ սարկաւագն։ Վասն հայրապետին մերոյ տեառն, այս անուն, և ամենայն ուղղափառ եպիսկոպոսաց և պատուական քահանայից և սարկաւագաց, և ամենայն ուխտի մանկանց սրբոյ եկեղեցւոյ զՏէր աղաչեսցուք ։

Եւ ասեն ի Տէր ողորմեա։ Եւ սարկաւագն ասէ Օրհնեա տէր ։

Եւ եպիսկոպոսն բարձրացուցեալ զխաչն՝ [illegible] կողմն, ասելով։ Օրհնեսցի և պահպանեսցի գաւառս և անդաստանս, նշանաւ սուրբ խաչիւս և սուրբ Աւետարանաւս, առ ի պտղաբերել, և բառնալ զամենայն հարուածս և զամենայն բնութիւնս չարեաց, յանուն Հօր և Որդւոյ և։

Եւ դնէ զխաչն ի սեղանն և գնան ի կողմն հիւսիսոյ, ասելով

ՇԱՐԱԿԱՆ ԳՁ. Փայտ կենաց որ փոխանակ։ 1009։

Որթի

Սրբոյ Աւետարանին որ ըստ Մարկոսի։ ԺԵ. 20։

ՁՏէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ ածին արտաքս զի ի խաչ հանցեն զնա։ Եւ ունէին պահակ զՍիմոն կիւրենացի՝ որ ընդ այն անցանէր եկեալ յագարակէ, զհայրն Աղեքսանդրի և Ռուփայ, զի բարձցէ զխաչափայտն նորա։ Եւ ածեն զնա ի Գողգոթա տեղի մի, որ թարգմանի՝ տեղի կառափելոյ։ Եւ տային նմա գինի զմռսեալ, և նա ոչ առ. և հանին զնա ի խաչ։ Եւ բաժանեցին զհանդերձս նորա, արկեալ վիճակս ի վերայ՝ թէ ո զինչ առնուցու։ Էր ժամ երրորդ, և հանին զնա ի խաչ։ 25։

Ձէնէ Աւետարանէն ասացէ սարկաւագն։

Վասն բարեպաշտ թագաւորին մերոյ, և զօրաց իւրոց, և վասն ամենայն թագաւորաց քրիստոնէից կարողութեան և յաղթութեան ի վերայ թշնամեաց և զօրանալոյ յամենայն գործս բարեաց զՏէր աղաչեսցուք։

Եւ ասէն խ. Տէր ողորմեա։ Սարկաւագն ասէ Օրհնեա տէր։

Եւ եպիսկոպոսն բարձրացուցանէ զխաչն, և [illegible] կողմն ասելով։ Օրհնեսցի և պահպանեսցի քաղաքս և բնակեալ ժողովուրդս ի սմա նշանաւ սուրբ խաչիւս և սուրբ Աւետարանաւս. փարատելով զամենայն հիւանդութիւնս և զամենայն խռովութիւնս ի մարդկանէ, յանուն Հօր և։

Եւ դնէ զխաչն ի սեղանն և երթան յարևմտից կողմն, ասելով

ՇԱՐԱԿԱՆ ԴԿ. Խաչի քո Քրիստոս երկրպագեմ։ 1033։

Որթի

Սրբոյ Աւետարանին որ ըստ Յովհաննու։ ԺԴ. 1։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս ասէ.

Մի խռովեսցին սիրտք ձեր, այլ հաւատացէք յԱստուած, և յիս հաւատացէք։ Ի տան Հօր իմոյ օթեվանք բազում են. ապա թէ ոչ՝ ասացեալ էր իմ ձեզ, եթէ երթամ և պատրաստեմ ձեզ տեղի։ Եւ եթէ երթամ և պատրաստեմ ձեզ տեղի, դարձեալ գամ և առնում

Digitized by Google

զձեզ առ իս. զի ուր ես եմ իցեմ, և դուք անդ իցէք. և ուր երթամ՝ գիտիցէք, և զճանապարհն գիտիցէք։ Ասէ ցնա Թովմաս. Տէր, ոչ գիտեմք յով երթաս, և զիա՞րդ զճանապարհն կարասցուք գիտել։ Ասէ ցնա Յիսուս. Ես եմ ճանապարհն և ճշմարտութիւն և կեանք. ոչ ոք գայ առ Հայր՝ եթէ ոչ ինև։ Եթէ զիս գիտէիք, ապա և զՀայր իմ գիտէիք, և այսուհետև գիտասջիք զնա։ Ասէ ցնա Փիլիպպոս. Տէր ցոյց մեզ զՀայր՝ և շատ է մեզ։ Ասէ ցնա Յիսուս. այսչափ ժամանակս ընդ ձեզ եմ, և ո՞չ ծանեար զիս Փիլիպպէ. որ ետես զիս՝ ետես զՀայրն. և դու զիա՞րդ ասես եթէ ցոյց մեզ զՀայր։ Ո՞չ հաւատաս եթէ ես ի Հայր, և Հայր յիս է. բանն զոր ես խօսիմ ընդ ձեզ, ոչ եթէ յանձնէ ինչ խօսիմ, այլ Հայրն որ յիս բնակեալ է նա գործէ զգործսն։ Հաւատա՞յք ինձ՝ եթէ ես ի Հայր և Հայր յիս. ապա թէ ոչ՝ գոնէ վասն գործոցն հաւատացէք ինձ։ Ամէն ամէն ասեմ ձեզ, թէ որ հաւատայն յիս, զգործս զոր ես գործեմ, և նա գործեսցէ, և մեծամեծս ևս քան զնոյնս գործեսցէ. զի ես առ Հայր երթամ։ 12։

Զինի աւետարանին քարոզէ սարկաւագն։ Վասն առ ի Քրիստոս հաւատացեալ ժողովրդականաց մերոց՝ արանց և կանանց՝ ծերոց և տղայոց, որք հաւատով ի սուրբ եկեղեցիս ժողովեալ են, զի պահպանեալ փրկեսցին սուրբ խաչիւս յամենայն վտանգից, յերևելի և յաներևոյթ թշնամեաց, և վասն քաղաքիս մերոյ և գաւառի, և ամենայն քաղաքաց և գաւառաց. և որ հաւատով բնակեալ են ի նոսա, զՏէր աղաչեսցուք։

Եւ ասեն Ի. Տէր ողորմեա։ Սարկաւագն ասէ Օրհնեա տէր։

Եւ եպիսկոպոսն վերացուցանէ զխաչն, և դարձուցանէ չորեքկողմն ասելով. Օրհնեսցի և պահպանեսցի քահանայապետութիւնս, և քահանայքս, հանդերձ սարկաւագօք, դպրօք, և ամենայն ուխտիւս լրմամբ, նշանաւ սուրբ խաչիւս, և սուրբ Աւետարանաւս, սրբութեամբ պաշտել սուրբ եկեղեցւոյս, յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ, այժմ։

Եւ երգեն յարեան սուրբ եկեղեցւոյ և առաջի խորանին ասելով.
ՇԱՐԱԿԱՆ ԲԿ. Խաչի քո Քրիստոս երկիր։ 497։

Եւ դնեն ի վերայ խորանի յարեանն սուրբ խաչն և զԱւետարանն. և երկիր պագանեն եպիսկոպոսն, և քահանայքն, և ամենեքեան։ Եւ ի կատարման Շարականին քարոզէ սարկաւագն. Սուրբ խաչիւս։ Եպիսկոպոսն ասէ գաղտնի. Պահպանեա։ Հայր մեր։

Digitized by Google

# ՑԱՆԿ

## ԸՆԴՀԱՆՈՒՐ ՇԱՐԱԿԱՆԱՑ





# ՑԱՆԿ

## ՏԷՐՈՒՆԱԿԱՆ ՏՕՆԻՑ





Digitized by Google

# ՑԱՆԿ

## ՏՕՆԻՑ ՍՐԲՈՑ



### Ա



### Բ



### Գ



Digitized by Google

Digitized by Google



Digitized by Google

